# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## Առաջին մասին:





# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## Երկրորդ մասին:





# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## Երրորդ մասին:





# ՅԱՆԿ ԳԼԽՈՑ

## Չորրորդ մասին։

---





Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 84

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ բանասիրական տեղեկութեանց



## ՄԱՍՆ Ա.

## ՆԱԽՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ



ԹԻՖԼԻՍ

Տպարան Մ. Շարաձէ եւ ընկ. || Типогр. М. Шарадзе и К°.

1895

# ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ:

Ա. Մ. Գարագաշեանի «Քննական պատմութիւն Հայոց» աշխատասիրութեան առաջին մասը (Նախնական ժամանակ) Կոստանդնուպոլսում տպագրուեցաւ 1880-ին եւ մեծ հետաքրքրութեամբ ընդունուեցաւ բանասէրներից: Այնուհետեւ 15 տարի անցաւ, բայց սորա շարունակութիւնը լոյս չտեսաւ, հեղինակից անկախ զանազան պատճառներով:

Հրատարակչական Ընկերութիւնս, կամենալով նպաստել ազգային պատմութեան ուսումնասիրութեան գործին՝ դիմեց յարգելի հեղինակին եւ առաջարկեց իւր ծառայութիւնը՝ լոյս ընծայելու նորա Պատմութեան յաջորդ մասերն եւս: Հեղինակը համաձայնեցաւ Ընկերութեանս առաջարկութեանը, եւ ահա լոյս է տեսնում նորա Քննական Պատմութիւնն ամբողջապէս:

Ինչպէս ընթերցողը կտեսնէ՝ այս պատմութիւնը հասցրած է մինչեւ հինգերորդ դարի վերջը եւ կանգ է առնում այնտեղ, որտեղ եւ Ղազար Փարպեցին: Պատմական այս նիւթը բաժանուած է չորս մասերի.—Ա. մասը պարունակում է Հայոց նախնական ժամանակը (մինչեւ պատմական ժամանակի սկիզբը). Բ. մասը պարունակում է Արշակունիների պատմութիւնը հեթանոսութեան ժամանակ. Գ. մասը՝ Արշակունիների պատմութիւնը քրիստոնէութեան ժամանակ, մինչեւ նոցա բարձումը, եւ Դ. մասը՝ Ե. դարի գրական շարժումը եւ կրօնական պատերազմները:

Հրատարակչական Ընկերութիւնս, ի նկատի ունենալով, որ Կ. Պոլսում տպագրուած Ա. մասը շատերին մատչելի չէ, միեւնոյն ժամանակ ցանկալով, որ իւր հրատարակութիւնն ամբողջական լինի՝ հարկ համարեց այս Ա. մասը երկրորդ անգամ տպագրել, հեղինակի համաձայնութեամբ:

*Յարգելով մեծապատիւ հեղինակի ցանկութիւնը՝ Ընկերութիւնս ոչ մի փոփոխութիւն չարաւ բնագրի մէջ, ո՛չ լեզուի եւ ոչ բովանդակութեան կողմից, թողնելով քննադատութեան՝ որոշել գրուածքի արժանաւորութիւններն ու թերութիւնները:*

*Ընկերութիւնս իւր կողմից ջանք չխնայեց, որ այս լուրջ եւ ստուար աշխատասիրութեան տպագրութիւնը ըստ կարելւոյն խնամքով կատարուի եւ զերծ լինի տպագրական թերութիւններից:*

---

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Նոր Հայոց պատմութիւն մը գրելու ձեռն արկաք, գործ առաւել դժուարին եւ փափուկ, երկար աշխատութեան եւ զգուշաւոր քննութեան կարօտ։ Հայոց պատմութիւն մը գրել թերեւս դիւրին էր մեզ, եւ ոչ այնչափ աշխատութեան եւ զգուշութեան կարօտ՝ եթէ բաւական համարէաք, երկայն կամ համառօտ, քաղել կարգաւ՝ որ ինչ կայ ի կարծեցեալ աղբիւրս պատմութեան մերոյ, որպէս արարին բազումք մինչեւ ցարդ։ Բայց հեղինակ օրինակել է այս մանաւանդ քան պատմութիւն գրել։

Ազգի մը պատմութիւնը գրելու համար ընտրութիւն եւ կարգ պիտոյ են, այսինքն՝ պատմագիրն պարտի բուն աղբիւրներն ընտրել, եւ զդէպս եւ զգործս յիշեալս ի նոսա ի մէջ բերել այնպիսի կարգաւ, զի ընթերցողն տեսցէ նախ՝ ի սկզբանէ մինչեւ ցվախճան, պատմական երեւոյթներուն պատճառներն եւ կապակցութիւնը. երկրորդ՝ տեսցէ մանաւանդ ամէն առիթ, որ գործել տուած է ազգին, ի ներքոյ եւ արտաքոյ, խորհրդիւ եւ կամ ազդմամբ իմն, այսինքն դիտմամբ եւ կամ յանդէտս. տեսցէ, երրորդ՝ ամէն արդիւնք որ հարկաւ եւ ի բնէ յառաջ պիտի գար եւ եկած է այն գործողութիւններէն իբրեւ ի պատճառաց։ Այսպէս ազգը կը ցուցուի կենդանի բարոյապէս եւ քաղաքականապէս միանգամայն եւ ոչ նիւթապէս միայն, իբրեւ անշարժ դիակ կամ իբրեւ լոկ պատկեր անմասն ի կենաց եւ ի շարժմանէ։

Որովհետեւ ազգ կամ ժողովուրդ մը, թէեւ ինքնիշխան, ցորչափ կենդանի եւ գործող է՝ չկարէ լինել այն աստիճան զատուցեալ եւ առանձին, մինչեւ բոլորովին դուրս մնալ որեւիցէ արտաքին ազդեցութենէ, այլ միշտ ուրիշ գոնէ զօրաւոր ազգերէ, ինչպէս նաեւ իւր աշխարհագրական ուղխութենէն աւելի կամ նուազ ազդում ընդունելու յարմար է՝ հարկ է պատմութիւնը, թէեւ մասնաւոր եւ ազգային՝ յառաջ տանել նկատելով ժամանակին ընդհանուր եւ մանաւանդ տիրող պատմութիւնը. չէ պարտ մոռանալ նաեւ երկրին եւ դրացի երկիրներուն աշխարհագրական փոփոխումն, որ զհետ գայ ներքին եւ արտաքին քաղաքական փոփոխմանց։

Բանիւ եւ խորհրդով, ոչ թէ լոկ նիւթապէս պատմութիւն գրողն, այսինքն այն, որ ընդօրինակող չէ, այլ ճշմարիտ պատմագիր՝ մեծ եւ կարեւոր եւ շատ անգամ դարերով մնայուն վճիռներու ձեռնագիր կը դնէ՝ ամեն անգամ որ դէպք մը կը հաստատէ եւ կամ գործի մը բարոյական յատկութիւնը կ'որոշէ։ Միթէ պարտի՞ առնել զայս առանց կանխաւ գիտնականապէս համոզուելու, թէ իրաւացի է վճիռը։ Ապա պատմագրի մը առաջին եւ գլխաւոր պարտուց մին պարտի լինել աղբերն, յորմէ առնու՝ վաւերականութիւնը, եւ հեղինակին, որում ծայնակից լինի՝ ոգին եւ լոյսն անաչառապէս ճանչնալ։ Քննադատութիւնը պատմագրին մի միայն միջոցն է աւանդութեանց խառնիխուռն կուտակութեան մէջէն ճանապարհ բանալ դէպ ի ճշմարտութիւնն, որ է կէտ նպատակի պատմագրին։ Որ միանգամ քննադատելու արտօնութիւնը կը զլանայ պատմագրին եւ կամ կը դժգմնի զարտօնութիւնն զայն ի կիր արկեալ տեսանելով ցուցանէ թէ կամ ոչ հաւատայ, թէ գոյ ստութիւն յաշ-

խարհի, եւ կամ, որ աւելի ճիշդն է՝ ոչ խարէ ի մէջ ճշմարտութեան եւ ստութեան։ Սակայն ուղիղ բանն եւ փորձ շատ տարբեր կը վկայեն։ Ընդհանրապէս պատմութեանց, մանաւանդ հին պատմութեանց մէջ յանձնական, յազգային եւ ի կրօնական նախապաշարմանց եւ կրից ծագեալ կամաւոր կամ ակամայ այլայլութիւններ եւ ի հայրենասիրական, նա մանաւանդ ի փառասիրական թիւր զգացմանց թելադրեալ խարդախութիւններ աղաւաղեալ կը գտնուին։ Այս եւ սոցին նման ապականեալ տարրներէ պատմութիւնը մաքրելով տալու համար նմա իւր ճշմարիտ գինը՝ պահանջի ի պատմագրէն ունել ոչ միայն գիտնական ընտրողութիւն, այլ եւ բարոյական քաջութիւն ընդդէմ ունելոյ յարձակմանց՝ որ կարեն գալ ազգային սնապարծութիւնը փաղաքշող նախապաշարումներէ, եւ չտալոյ տեղի ազգային անդէպ զգացումներ վիրաւորելու երկչոտութեան։ Սուտին ճակատագիրն այս է, որ կանուխ կամ անագան, թէպէտ ոչ ամենեցուն՝ կիրթ եւ կորովի մտաց անշուշտ կը յայտնուի, եւ ընդհանուր խայտառակութիւնն այնուհետեւ հարկ իւր է։

Վնասակար, միանգամայն ծաղրելի է նաեւ զզուելի պարծենկոտութեամբ պատմութիւնը փծուն գովեստներով փայլուն երեւցուցանել ջանալ։ Զիք ինչ որ այնպէս նուաստացուցանէ դիւցազնական գործոց անգամ բուն յարգը՝ ինչպէս սին եւ պարծուկ վերադիրներ։ Իրք պարտին խօսել ի պատմութեան, ոչ թէ ներբողն։ Ազգային սնապարծութիւնը շողոքորթողներուն մեծագոյն վնասակարութիւնը սա է, որ կ'ապականեն հասարակաց ուղիղ բանը եւ խուլ գործեն զժողովրդեան ձայնի քննադատութեան։

Յասացելոց աստի կ'իմացուի, թէ մեր այս պատմութեան իւրաքանչիւր բաժանման պիտի գտնուի համառօտ տեղեկութիւն ինչ աշխարհագրական որպիսութեան երկրին, համդերձ ժամանակակից, մանաւանդ տիրող պատմութեամբ։ Արդարեւ ամէն ժամանակակից առոյգ պատմութիւն պարտի պատասխանել միշտ ճշդիւ երկուց այսոցիկ—երկրին աշխարհագրական որպիսութեան, եւ արտաքին տիրող պատմութեան պարագաներուն։ Այս կերպով, աշխարհացոյց տախտակ մը գծագրելու պէս պատմական գծագրին ցանցը ուրուագծելով կարեմք դիւրաւ զետեղել զդէպս, ժամանակագրական կարգաւ իւրեանց։

Յետ դնելոյ զայսոսիկ սկզբունս, որոց պիտի ջանանք ըստ մարթելոյ հաւատարիմ գտանել՝ գանք պատմութեան։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ՄՈՒՏՔ

*1. Բաժանումն Հայոց պատմութեան: 2. Աղբիւրք Հայոց պատմութեան նախնական ժամանակի: 3. Ազգային վէպք: 4. Ցոյն պատմիչք եւ Հրէից մատեանք: 5. Բեւեռագիրք:*

**1.** Պատշաճ թուեցաւ մեզ Հայոց պատմութիւնը երկու գլխաւոր ժամանակ բաժանել. Ա. նախնական և Բ. պատմական։ Նախնական անուանեմք զմիջոցն, որ է ի սկզբանէ մինչև Տիգրան մեծ (արշակունի), կամ մինչև 90 նախ քան զՔրիստոս։ Պատմական անուանեմք զմիջոցն ի Տիգրանայ և այսր, կամ 90-էն նախ քան զՔր. մինչև մեր ժամանակը։ Զայս վերջին միջոց պատմական կոչելոյ պատճառ ըստ մեր սա է, զի ի մեծէն Տիգրանայ և այսր սկսանի պատմութիւն մեր լինել վաւերական և գրեթէ անընդհատ։

Այս յայտնի է մեր պատմութեան աղբիւրներէն։

**2.** Հայոց պատմութեան նախնական ժամանակին համար վաւերական աղբիւր չունինք ոչ ընդհանուր և ոչ մասնաւոր։ Այս դաւաոր ժամանակին վերաբերեալ ինչ որ կայ իբրև սոյգ՝ քաղուած է օտար պատմութեանց մէջ ուրեք ուրեք և իբրև ըստ պատահման գտնուած յիշատակութիւններէ և կամ պատմական ակնարկութիւններէ։ Ինչպէս ուրիշ ազգաց շատերուն, նոյնպէս մեր պատմութեան մէջ, որչափ յառաջ կ'երթանք դէպ ի սկիզբն ազգին՝ այնչափ կ'անօսրանան և կ'աղօտանան դէպք։ Անհատներու պէս նաև ազգեր շատ քիչ բան կարեն յիշել իւրեանց տղայութեան ժամանակէն։ Բայց այս արդիւնք է մանաւանդ՝ մարդկային ազգին այն որբոցի դարերուն մէջ, պակասութեան և անկատարութեան միջոցաց աւանդելոյ յետնոց զյիշատակս երևելի գործոց և դիպաց։

**3.** Այս միջոցաց հնագոյնն էին, որպէս յայտ է, բերանացի աւանդեալ վէպք։ Այսպիսի վէպեր կամ երգեր ունէին և Հայք ոչ

սակաւ, և այն՝ բաւական հին ժամանակներ։ Որփէոսք, նա մանաւանդ Եսիոդոսք և Հոմերոսք չեղեն պակաս և առ մեզ։ Կը թուի մանաւանդ, թէ Հայոց վիպասանք ժառանգական տոհմ էին, եթէ ոչ քուրմք իբր զՏրուիդս՝ գոնէ Տրուպատուրներու պէս երգեցիկ խումբեր։ Խորենացին իբրև 13 դար առաջ կը վկայէ, թէ այսպիսի երգիչներ ի հնումն կ'երգէին երևելի արանց վարքը և բարքը։ «Զորմէ (զՏիգրանայ) ասէին ի հինսն մեր որք բամբռամբն երգէին՝ լինել սմա և ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր» (Խոր. Ա. ԻԴ.)։ Ոչ ի հինս միայն, այլ և առ նովին իսկ Խորենացւով էին ծանօթ այսպիսի երգեր։ Խորենացին յետ ի մէջ բերելոյ զԵրկնէր երկինն՝ ասէ. «Զայս երգելով ոմանց բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք։ Յետ որոյ և ընդ վիշապաց ասէին յերգն կռուել նմա (Վահագնի) և յաղթել, և կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին» (Խոր. Ա. ԼԱ.)։ Յառաջ քան զԽորենացին Բուզանդ կը վկայէ, թէ կը սիրէին Հայք զերգս վիպասանաց իւրեանց և միշտ ի բերան ունէին զնոսա.—«Զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք ի փոյթ կրթութեանցն, և նմին հաւատացեալք, և ի նոյն հանապազորդեալք» (Բուզ. Գ. ԺԳ.)։ Զիարդ և իցէ՝ այն հին վէպերէն և երգերէն հազիւ թէ հատակտորք կան այժմ։

4. Մեր նախնական ժամանակի պատմութեան աղբիւրք, եթէ արժան իցէ աղբիւր կոչել՝ են առ այժմ ոմանք ի հին յոյն պատմագրաց, և Հրէից մատեանք։ Ինչ որ Հերոդոտոս և Քսենոփոն, և Չորրորդ գիրք Թագաւորաց և մարգարէութիւնք Եսայեայ և Երեմիայ կը յիշեն զՀայոց յառաջ քան զԱղեքսանդր մեծ, և Պողիբիոս, Ստրաբոն և Պլուտարքոս՝ յետ Աղեքսանդրի մինչև Տիգրան մեծ՝ են արդարև մեծաւ մասամբ ստոյգ, բայց այնպէս անօսր, որ չեն արժանի կոչելոյ աղբիւրք պատմութեան Հայոց։

5. Աղբիւր անունը տալ թերևս աւելի յարմար էր բևեռագիրներուն, բայց այս կնճռոտ արձանագրութիւնները կարդալու եղանակները դեռ ոչ այլ ինչ են եթէ ոչ հանճարեղ փորձեր հին առեղծուած մը լուծելու։ Այս և այսպիսի են աւասիկ մեր պատմութեան աղբիւրք մինչև Տիգրան մեծ, յետ որոյ սկսանին առատանալ աղբիւրք, այնպէս որ օտար և ազգային պատմիչներով գրեթէ անընդհատ կուգայ առ մեզ պատմութիւնը, թէպէտ ոչ միշտ մաքուր և անխառն։



# ՄԱՍՆ Ա.

# ՆԱԽՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

---

## ԳԼՈՒԽ Ա.

### ԾԱԳՈՒՄՆ ՀԱՅ ԱԶԳԻՆ

*1. Ի՞նչ պատմական տեղեկութիւն կայ զծագմանէ Հայ ազգին: 2. Կարծիք նախնեաց մերոց յետ ընդունելոյ զքրիստոնէութիւն զծագ'մանէ ազգին: 3. Խորենացին՝ զծագմանէ Հայոց: 4. Աւանդութիւն զՀայկայ յառաջ քան զԽորենացին. Հայկ. Օրիոն: 5. Ծագումն բառից «Հայկական», «Հայկազեան»: 6. Հայերէն լեզուն՝ աղբիւր զծագմանէ Հայոց: 7. Արդի Գիտնականք՝ զծագմանէ Հայոց. Բոլքնստոն, Լընորման, Լուի տը Բոալէր: 8. Հին քաղաքակիրթ ցեղ, Քուշեանք եւ Քամեանք: 9. Քուշեանք, Սեմականք եւ Հնդեւրոպական ցեղք ի Հայաստան: 10. Ծագումն եւ Թուական զաղթականութեան Հնդեւրոպականաց ի Հայս:*

**1.** Հայոց պատմութեան նախնական ժամանակին մէջ առաջին փնտռուելու բանն է Հայոց ազգին ծագումը։ Զծագմանէ Հայոց ստոյգ ինչ ոչ պատմութիւն և ոչ աւանդութիւն ունիմք։ Չէ յայտ, թէ Հայք յառաջ քան զընդունելն զքրիստոնէութիւն ինչ աւանդութիւն ունէին զծագմանէ իւրեանց։

**2.** Յետ ընդունելոյ զքրիստոնէութիւնն, նախնիք մեր, յառաջ քան զԽորենացին, Ծննդոց գրոց ազգաբանութեան նայելով զՀայս Նոյի որդւոյն Յաբեթի թոռանէն, ի Թորգոմայ սերեալ համարեցան, քանզի հին քրիստոնեայ մեկնիչներէն ոմանք Հրէից գրոց մէջ յիշուած «Թոգարմա» (Թորգոմ) անուամբ իմանային զՀայաստան կամ զմասն մի նորա. ուստի և մեր նախնի մատենագիրներէն ոմանք այս մեկնութեան նայելով երբեմն «Տուն Թորգոմայ», «Թորգոմեան ազգ», կամ «Որդիք Թորգոմայ» կոչէին զՀայս։ «Քանզի յԱրարա-

տեան գաւառին, ի Թագաւորանիստ կայեանսն բղխեցին Հայոց *տանն Թորգոմայ* շնորհք քարոզութեան աւետարանին պատուիրանացն Աստուծոյ» (Ագաթ. ԺԷ.)։ «Այս իշխանք են ընտիրք, կուսակալք, կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք ի մէջ Հայաստան աշխարհի *տանն Թորգոմայ*» (Անդ. ԾԺԲ)։ «Ընթերցեալ զ*Թորգոմեան ազգիս*, զՀայաստան աշխարհիս զաստուածապարգեւ աւետեաց աւետարանին քարոզելոյ» (Անդ. Ցոլքն)։ «Սգային (զՆերսէս) ամենայն ազատք և շինականք, ամենայն բնակիչք *տանն Թորգոմայ*» (Բուզ. Ե. Լ.)։ «Մատեանք, յիշեցուցիչք պատմութեան Հայաստան աշխարհին *որդւոց Թորգոմայ*» (Անդ. Ցոլքն)։

**3**. Խորենացին է առաջին, որ զՀայս համարի սերեալ ի Հայկայ ումեմնէ, զոր չորրորդ դնէ յետ Յաբեթի այսպէս. Յաբեթ, Գոմեր, Թիրաս, Թորգոմ, Հայկ։

**4**. Առ նախնի մատենագիրս մեր, յառաջ քան զԽորենացին, Հայկ կը յիշուի միայն իբրեւ հսկայ աղեղնաւոր, Յունաց Օրիոնի նման։ Այսպէս ի հայերէն թարգմանութեան Յոբայ և Եսայեայ՝ Օրիոն համաստեղութիւնն Հայկ թարգմանուած է. «Խելամո՞ւտ իցես կարգի բազմաստեղաց, և քո բացեա՞լ իցէ զպատրուակ Հայկին» (Յոբ ԼԸ. 31)։ «Աստեղք երկնից Հայկիւն հանդերձ և ամենայն զարդուն երկնից լոյս մի՛ տացեն» (Ես. ԺԳ. 10)։ Օրիոն, յն. Ὠρίων, գեղեցիկ կամ ընտրեալ, ըստ առասպելաց Յունաց էր որսորդ քաջ և յանդուգն։ Համարձակեցաւ, ասեն, ի վէգ գալ ընդ Արտեմեայ, կամ, ըստ այլոց, չեդ ունկն Արտեմեայ, որ հարեալ էր ի սէր նորա։ Ընդ այս զայրացեալ դիցուհւոյն՝ ետ խայթել զնա կարճի. յետոյ սորջացեալ ընդ մահ գեղեցիկ երիտասարդին՝ փոխեաց զնա յերկինս, ուր Օրիոն եղև մին ի պայծառագոյն համաստեղութեանց։ Մեր նախնիք փոխանակ Օրիոնի դրած են զՀայկ, իբրեւ հսկայ որսորդ, բայց պատմութիւնն Օրիոնի նմանութիւն ունի մանաւանդ ընդ պատմութեան Արայի, զորմէ տեսցուք յետոյ։ ԶՀայկ յիշուած գտանեմք նաև ի պատմութեան Ագաթանգեղոսի, ուր զՏրդատայ ասի, թէ ութ մեծամեծ քարեր «հայկաբար» շալկելով բերաւ Մասեաց լեռներէն։ «Սկայազօրն (Տրդատ) *հայկաբար* զութ արձանսն ի վերայ ուրոյ թիկանց ստանձնեալ բերէր ի վկայարան տաճարացն» (Ագաթ. ԾՁ.)։

**5**. ԶՀայկ, իբրեւ Հայոց ազգին նահապետ՝ յառաջ քան զԽորենացին ոչ ուրեք յիշեալ գտանեմք առ նախնիս մեր, և ոչ Հայոց լեզուն կամ ազգը յառաջ քան զԽորենացին երբէք յանուն Հայկայ *հայկական* կամ *հայկազեան* կոչուած է ուրեք. այս բառերն առաջին անգամ գործածողն է Խորենացին։ Ագաթանգեղոս և Բուզանդ

«Հայաստան» կամ «Հայ» բառը կը գործածեն իբրև վերադիր.—«Զիւր վիճակն, զՀայաստան երկիրն, պայծառացուցեալ զամենայն աւուրս կենաց իւրոց լուսաւորէր» (Ագ. ՃԻԷ)։ «Նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին» (Բուզ. Գ. Բ.)։ «Վասակ իւրով Հայաստան գնդաւն հարկանէր զզօրսն Պարսից» (Անգ. Դ. ԼԹ.)։ «Եւ յաղթահարէր զզօրս Պարսից գունդն Հայաստան» (Անգ. Դ. ԽԱ.), «Սգային զՆերսէս ծագէ ի ծագ ամենայն սահմանք երկրին Հայոց, Հայ լեզուն առհասարակ (Անգ. Ե. Լ.)։ Այսպէս անթիւ տեղեր։ Հայկական կամ հայկազեան բառերն ևս գործածէին անշուշտ, եթէ գտնուէր աւանդութիւն յազգին, թէ Հայք ի Հայկայ սերին։

**6.** Հայոց ծագման վրայ մեր գիտութեան ստուգագոյն և միակ աղբիւրն է առ այժմ հայերէն լեզուն։ Որովհետև հայերէնն հնդեւրոպական կամ արիական կոչուած լեզուաց կարգէն է, որպէս վկայեն մեր լեզուն քննող գիտունք՝ կարեմք հետևցնել, թէ նաև Հայք են մարդկային ազգին հնդեւրոպական կամ արիական կոչուած ցեղէն, որմէ են և բազումք ի հին և ի նոր երևելի ազգաց, զորօրինակ Հնդիկք, Արիք, Յոյնք, Լատինք, գերմանական և սլաւեան ցեղեր, այսինքն այժմու եւրոպական ազգաց գրեթէ բոլորը։

**7.** Ոմանք յարգի հնաբանից զՀայս համարին ծագմամբ Փռիւգացի։ «Ուրարդւոյ, (այսինքն Արարատայ, քանզի զԱրարատ Ուրարդի կամ Արարդի կոչուած կը գտնեն Ասորեստանի սեպագիր արձանագրութեանց մէջ Օբերդ և այլք, որ, ինչպէս կը կարծուի, կը կարդան այն արձանագրութիւնները), լեզուն, ասէ Րօլինսօն, չունէր ամենևին խնամութիւն ընդ այժմու հայերէնին։ Այս լեզուն խօսող ցեղն թուի գաղթեալ ի Փռիւգիոյ, և առ սակաւ սակաւ գրաւեալ զլերինս արևելեան մասին Արմենիոյ, վանելով կամ ընդ իւր միացնելով զհին Ուրարդիս, և փոխանակ նոցա դնելով զանուն, զլեզուն զկրօնս և զաւանդութիւնս իւր» (Գ. Րօլինս. Թարգմ. Հերոդոտ.)։

Լընորման, ուրիշ հնաբան մը, երկու տարբեր գաղթականութիւններ եկած կը դնէ յԱրմենիա այլևայլ ժամանակ։ Զառաջին գաղթականութիւնն նոյնացնելով ընդ Հայկայ Խորենացւոյն՝ կը համարի Տիգրիսի և Եփրատայ ստորին հովիտը (Բաբելոն) բնակող հին Քուշեաններէն ցեղ մը, ի Հերոդոտոսէ Ալարոդ կոչուած, զոր Ասորեստանցւոց Ուրարդին և Եբրայեցւոց Արարատը կը համարի։ Այս քուշեան ցեղէն մնացած կարծէ Լընորման Արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւններն որ ի Վան։ Զերկրորդ գաղթականութիւնն կոչէ Լընորման Արմենական յանուանէ Արմենակայ, զոր հա-

մարի ոչ իբր պատմական անձն, այլ իբր անուն ազգին՝ անձնաւո-րեալ։ «Քան զառաջին գաղթականութիւնն նշանաւոր է, ասէ, երկրորդս այս արմենական գաղթականութիւն, զոր ազգային աւանդութիւնն անձնաւորեալ է յԱրմենակ, իբրև ազգական Հայկայ» (Լընորմ. Առձեռն Հնախօս. արևել. Բ. Հատ. էջ 364)։

Լուի տը Րոպէր կ'ենթադրէ քան զառաջին գաղթականութիւնն Լընորմանի աւելի հին քուշեան գաղթականութիւններ յԱրմենիա. իսկ զՀայկեան գաղթականութիւնն համարի սեմական, որ հալածելով զՔուշեանս անդր քան զԿուր դէպ ի հիւսիս՝ ինքն կալաւ զհարաւային մասն, զհովիտն Երասխայ յարևմտից Մասեաց, մինչև ի լերինս Կորդուաց։ Այս սեմական գաղթականութենէն մնացած կը համարի Տը Րոպէր արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւնս Վանայ։ Յետ Հայկեան կամ Սեմական գաղթականութեան, իբր ի միջոցի Զ. դարուն նախ քան զՔր. կը դնէ վերջին հնդեւրոպական արմենական գաղթականութիւն մի ի Փռիւգիոյ, և այս վերջին գաղթականութենէն եկած կը համարի զՀայս և զհայերէն լեզուն։

8. Այս ենթադրութիւնք արդարև գեղեցիկ են, կը ցուցնեն խորին պատմական հմտութիւն, արժանի համբաւոյ այն երևելի հնաբանից, զորոց զանուանս յիշեցաք, և չեն ամենևին առանց պատմական հիման։ Տարակոյս չկայ, թէ հին նախապատմական ժամանակ յառաջագոյն իսկ քան զվերջին հարստութիւնն Ասորեստանի կամ Նինուէի՝ միջին և արևմտեան Ասիոյ ինչպէս ուրիշ կողմերուն, նոյնպէս Հայոց, մանաւանդ հարաւային (Վանայ) կողման բնակիչք էին մարդկային ազգին այն հին քաղաքականացեալ ցեղէն, զոր գիտունք Քամեան և Քուշեան կ'անուանեն։ «Թուի ստոյգ, ասէ Լընորման, թէ ի սկզբան Քամեանք ունէին զմեծագոյն մասն արևմտեան Ասիոյ յառաջ քան զՍեմականս, որ վանեցին զնոսա անտի»․ և այլուր. «Ամենայն գիտունք միաբան ընդունին այժմ, թէ ժողովուրդք բնակեալք յափունս Տիգրիս գետոյ, ի հարաւային Պարսկաստան, նաև ի մասին ինչ Հնդկաստանի՝ էին ի քուշեան ցեղէ, մինչև եկեալ էր Սեմականաց և Արեաց ունել զտեղի նոցա» (Լընորմ. Առձեռն Հնախօս. արևել. Հատ. Ա. էջ 98)։ «Հին քաղաքակիրթ ազգաց մէջ Քուշեանք և Քամեանք այնպիսի որոշ յատկութիւն մը կը ցուցնեն և այնչափ դարերով յառաջ են քան զՍեմականս և զԱրիականս, որ կ'ստիպուինք ընդունել, թէ սոքա եղեն առաջին քաղաքակիրթ ցեղ յարևմտեան Ասիա և յարևելս հիւսիսոյ Ափրիկէի յառաջ քան զերևել Սեմականաց և Արիականաց» (Էրն. Րընան, Պատմ. Սեմ. լեզ. էջ 489)․ և սակաւ ինչ ի ստորև, յետ ա-

սելոյ, թէ «առաջին քաղաքակիրթ ցեղ եղեն Քուշեանք և Քամեանք յարևմտեան Ասիա և յԱփրիկէ», ցուցնելով զքաղաքական և զընկերական տարբերութիւն նոցա ի Սեմականաց և յԱրեաց՝ յաւելու. «Այս առաջին քաղաքակիրթ ցեղ տեղի տուաւ Սեմականաց և Արիականաց ճիգերուն։ Ի Չինաստան միայն տևեց այն հին (Նախապատմական) քաղաքակրթութեան տիպը և եհաս մինչև առ մեզ»։

9. Քուշեանց ի Հայաստան բնակութեանն ապացոյց՝ Վանայ մօտ Շամիրամայ գործ համարուած քարափոր շէնքն է, ինչպէս նաև արմենական կոչուած սեպագիր արձանագրութիւնք այն կողմանց։ (Տես Վան քաղքին նկարագիրն ի ստորև)։ Հաւանական է, թէ նաև Սեմականք բնակած են ի Հայս յետ Քուշեանց, նախապատմական ժամանակ։ Բայց նաև հնդեւրոպական ցեղք՝ հին, նախապատմական ժամանակ եկած էին Հայաստան, յառաջ իսկ քան զվերջին հարստութիւնն Ասորեստանի։

10. Այլ թէ այս հնդեւրոպական ցեղք փռիւգացի գաղթականութիւն էին, որ եկան ի Հայս ի Չ. դարուն նախ քան զՔր., և թէ Արմէնք, այսինքն Հայք, այս փռիւգացի գաղթականութեան սերունդ են՝ այս կարծիքն, ըստ մեզ, պատմական հիմ չունի։ Ոչ առ Հերոդոտոսի և Քսենոփոնի, որ ժամանակաւ շատ հեռի չէին այս գաղթականութեան ենթադրեալ ժամանակէն, այն է Չ. դարէն նախ քան զՔր., և ոչ այլուր կը գտնենք այսպիսի գաղթականութեան յիշատակութիւն։ Հրէից մատեանք Բաբելոնի առման ժամանակ առ Կիաքսարաւ որդւով Աժդահակայ և առ Կիւրոսիւ, այն է 538-ին նախ քան զՔր.՝ յիշեն Արարատեան թագաւորութիւն մը.—«Պատուէր տուք յինէն Արարատեան թագաւորութեանն և Ասքանազեան գնդին» (Եր. ԾԱ. 27), ընդ որում, ըստ Քսենոփոնի, վաղուց դաշնակից էին Մարք։ Վարդան, Տիգրան, Շաւարշ յատուկ անուանք, որ արիական բառեր են և ոչ քուշեան կամ քամեան կամ սեմական՝ Չ. դարուն և աւելի առաջ իբրև անուանք արքայից և արքայորդւոց Արարատայ թագաւորութեան՝ կը յիշուին հին յոյն պատմիչներէ (Դիոդ. Սիկ. Բ, Գլ. Ա։ Քսեն. Խր. Կիւր. Գ. Գիրք, Գլ. Ա.)։

Արդարև հայերէն լեզուն հնդեւրոպական լեզուաց արևմտեան ճիւղին կը վերաբերի մանաւանդ քան արեւելեան արիականին, թէպէտ ի վերջնոյ ատտի առած է յետոյ դրացութեամբ զմեծ մասն հարստութեան իւրոյ։ Մեր հնագոյն բառերը և քերականական ձևաւք շատ մօտ ազգականութիւն կը ցուցնեն յունարէնի, լատիներէնի և գերմանական ճիւղին հետ. բայց այս բաւական չէ հաստատելու Րօլինսոնի և Տը Րոպէրի ենթադրութիւնը, և այս երեւելի հնաբանք

ոչ այնչափ լեզուաբանական պատճառներէ, որչափ հին յոյն պատմչաց ոմանց խօսքէն առաջնորդուած կը թուին փռիւգացի ծագումն տալ Հայոց։ Հերոդոտոս զՓռիւգացիս և զԱրմէնս համարի եղբարս, այսինքն համացեղս (Հերոդոտ. Ա. 171). և Դիոնեսիոս աղիկառնացի կոչէ զԱրմէնս համալեզուս, ὁμόγλωσσοι, ընդ Փռիւգացւոց, և ի յիշելն զպատերազմն Քսերքսի ընդդէմ Յունաց՝ ըստ օրինակին Փռիւգացւոց վառեալս և զգեցեալս պատմէ զԱրմէնս ի բանակին Արեաց։ Նաև Եւդոքսիոս, ուրիշ յոյն հեղինակ, հաւանականապէս առ Պտղոմեամբք, նմանաձայն յոյժ ասէ լինել զհայերէնն փռիւգերէնի, τῇ φωνῇ πολλὰ φρυγίζουσιν (Եւդոք. առ Ստեփ. Բիւզ. Ե. Արմենիա)։ Գիտել պարտ է սակայն, զի հին պատմիչք փռիւգացի անուամբ իմանային Փոքուն Ասիոյ հնդեւրոպական կամ արիական ցեղերը (Լանկլ. Ցիշ. Ձեռ. արձանագր. և գեղար. Հտ. ԺԹ. էջ 339). և շատ հաւանական է, թէ Արմենիոյ արեւմտեան մասին ժողովուրդք, իբրեւ սահմանակիցք Փոքուն Ասիոյ՝ համացեղ և համալեզու էին այն երկրին հնդեւրոպական ցեղին։ Յոյն պատմիչք, հնագոյնք անգամ ի նոցանէ, ինչպէս Հերոդոտոս և Քսենոփոն, որ յետոյ են քան զԴարեհ Վշտասպեայ,—առ որով ոչ միայն Արմենիոյ արեւելեան մասն, Մեծ Հայք, այլև արևմտեանն, այն է Փոքր Հայք, սահմանակից Փոքուն Ասիոյ, կոչեցան Արմնիք կամ Արմենիա՝—ընդհանուր անուամբ կը կոչեն Արմէն Մեծին և Փոքուն Արմենիոյ բոլոր ժողովուրդները։ Ուստի յոյն պատմչաց խօսքը, թէ Արմէնք համացեղ և համալեզու էին Փռիւգացւոց՝ պէտք չէ բոլոր Արմենիոյ ժողովրդոց վրայ առնուլ և հետևցնել, թէ Հայք փռիւգացի գաղթականներ էին, և թէ հայերէն լեզուն, որ Մեծ Հայոց և բուն Արարատեան ցեղին լեզուն էր՝ փռիւգական է։



# ԳԼՈՒԽ Բ.

## ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ:

*1. Հայաստան լեռնային երկիր է: 2. Բարձրութիւնն ի ծովէ: 3. Տաւրոսի երկճիւղ զօտին: 4. Մասունք նորա: 5. Գետք. Եփրատ, Տիգրիս, Երասխ: 6. Քաղաքական հանգամանք նախնական ժամանակի Հայոց: 7. Եբրայեցւոց Արարատը մեր Այրարատն է: 8. Այլեւայլ թագաւորութիւնք ի Հայս: 9. Հայաստան միացեալ, Արմինիք. բաժանումն ի մեծ եւ ի փոքր Հայս: 10. Արարատեան թագաւորութիւն: 11. Ազգք սահմանակիցք Արարատայ: 12. Քաղաքք ի Հայս ի նախնական ժամանակի. Երիզա, Աշտիշատ, Արմաւիր: 13. Քաղաքք ի Հայս ըստ բեւեռագրաց: 14. Վանայ քարաբլուրը. բեւեռագիրք Վանայ: 15. Վան քաղաք: 16. Շինութիւն նորա՝ ըստ Խորենացւոյն: 17. Վանայ ջրուղն՝ ըստ Խորենացւոյն: 18. Խորենացւոյն աւանդութեան պատմական յարգը: 19. Նկարագիր Վանայ ջրուղին ըստ Շուլցայ: 20. Թէ ընդէ՞ր Շամիրամայ ընծայի շինութիւն ջրուղին Վանայ: 21. Վանայ ջրուղին, ինչպէս նաեւ բեւեռագրաց հնութիւնն:*

**1.** Զհայաստան կամ զԱրմենիա կրնանք կոչել անհուն բարձրաւանդակ կամ լեռնադաշտ, սակաւ ինչ հակեալ յարեւելս կոյս։

**2.** Կեդրոնական մասն նորա, որ է նահանգն Արարատեան՝ ըստ Րիթթէրայ իբր 2,740 ոտք ի վեր է ծովուն երեսէն։ Անտի դէպ ի հիւսիս երթալով, ասէ նոյն աշխարհագիր, ի մէջ Կուր գետոյ և Կովկասեան գօտւոյն կը գտնենք լերանց շղթայ մը, որ Կովկասեան գօտւոյն հետ գրեթէ հաւասար ուղղութեամբ՝ կ'ընթանայ յարեւելից յարեւմուտս, և է Փոքրին Կովկասն Հայոց, կամ «Լեառն մթին» ըստ Խորենացւոյն (Խորենացի Բ. Ը.)։ Այս լեռներէն անդին անցնիլ անհնար էր՝ բայց եթէ մեր պատմութեան մէջ «Կապան» կամ «Դուռն» կոչուած նեղ կիրճերէ, որպիսի էին Կապանն Ձորայ՝ Վրաց ձեռքը, և Դուռն Ալանաց կամ Կասպից՝ Աղուանից ձեռքը — հաւանականապէս երկու Տուրանո—աբխական ցեղեր, որ ի վաղուց հետէ կը բնակէին ի հովտին որ ի մէջ յիշեալ լերանց և Կուր գետոյ, և որ 1,100 ոտք միայն բարձր է ծովուն երեսէն։ Այսպէս հովիտն Երասխայ՝ իբր՝ 1,640 ոտք աւելի բարձր է քան զհովիտն Կուր գե-

տոլ, որ է հիւսիսային սահման նորա։ Գրեթէ նոյն բարձրութիւնը կը պահէ Հայաստան մինչև ի հարաւային սահման իւր Մասիոս, կամ ըստ Հայոց Կորդուաց գօտին։ Դէպ արևելք միայն, որպէս ասացաք, կը հակի տակաւ մինչև իւր արևելեան սահմանն Ատրպատական. իսկ դէպ յարևմուտս, ընդհակառակն, մեղմով կը բարձրանայ մինչև իւր արևմտեան սահմանն ի Փոքրն Հայս, կամ Տաւրոսի այն ճիւղը, որ կ'երթայ ի հարաւոյ ի հիւսիս, Մոսքեկան անուամբ ծանօթ առ հինս։

**3.** Տաւրոսի այս ճիւղէն, ըստ Րիդդէրայ, երկճիւղ շղթայ մը գալով առնէ զԱրմենիոյ անհուն լեռնադաշտն, իբրև արդարև Ալպեան երկիր մը, այնպէս որ աշխարհի հնագոյն աւանդութեանց մին, Եբրայեցւոց գիրքը, ոչ այլազգ ճանաչէ զԱրմենիա, կամ նոյն իսկ Գրքին բառով զԱրարատ՝ եթէ ոչ կատարեալ լեռնային երկիր. հոն կ'իջեցնէ Նոյայ տապանը, հոն ապաստանել կու տայ Սենեքերիմայ հայրասպան որդւոց։ «Եւ Նստաւ տապանն ի լերինս Արարատայ» (Ծննդ. Ը. 4.)։ «Ադրամելէք և Սարասար որդիք նորա (Սենեքերիմայ) հարին զնա սրով, և ինքեանք զերծան յերկիրն Արարատայ» (Դ. Թագ. ԺԹ. 27)։

**4.** Յիշեալ երկճիւղ լերանց մասերն են—Նպատ, սաստկասառոյցն, rigidum Niphaten, ըստ Ովրատեայ (Ովր. գիրք Բ. երգ Թ.), լեառնն Ծաղկէոյ, բազմերգ (Խոր. Գ. ԻԳ.), և մանաւանդ Մասիք, Ազատն ըստ վիպասանաց (Խոր. Բ. ԿԱ.) և Արագած, սպիտակափառն, ըստ Խորենացւոյն (Խոր. Ա. ԺԲ.)։ Սոքա՝ ի հիւսիսային մասին. իսկ ի հարաւային մասին՝ լերինք Սասնոյ կամ Հայոց Տաւրոսն ըստ Բուզանդայ, Ընձաքիարս և այլք, որք կը կազմեն Արմենիոյ անհուն լեռնադաշտին վրայ անթիւ զուարճալի հովիտներ, ջրարբի ձորեր, պտղաբեր դաշտեր և ոչ սակաւ մեծ և փոքր ծովակներ, որոց երևելիքն են ծովն Գեղամայ և մանաւանդ Բզնունեաց, որ և ծով Վանայ, լի պատմական յիշատակօք։

**5.** Արմենիոյ անհուն լեռնադաշտն ունենալով այսչափ լեռներ՝ է նաև վազուն ջրերու անսպառ աւազան։ Գրեթէ չկայ հոն նահանգ և գաւառ որ չունի իւր գետերն ու գետակները, որք մերթ առանձին և մերթ միացեալ թափին ի ծոց միոյն յերից մայր գետոց, որ են Եփրատ, Տիգրիս և Երասխ։ Եփրատ և Տիգրիս բղխելով ի մի և ի նոյն աւազանէ, յորմէ Երասխ, այն է Կարնոյ ջրաւէտ գաւառէն՝ շուտով կը թողուն զիւրեանց ծննդեան երկիր, գծելու համար Արմենիոյ, մին՝ արևմտեան և միւսն՝ հարաւային սահմանը, բաց յարևելեան բազկէն Եփրատայ, այն է յԱրածանւոյ, որ կը թափի յԵփրատ, առանց ելլելու Հայաստանի հողէն, ոռոգելով հարա-

ային նահանգաց մեծ մասը։ Բայց բուն ազգային գետ է Երասխ, անմահացեալն յերգս Վիրգիլեայ իբրև խորտակիչ կամրջաց, pontem indignatus (Վիրգ. Են.), որով կ՚իմանայ բանաստեղծն զՀայաստան, որ արդարև խորտակած էր հռոմէական լուծն առ Անտոնեաւ։

Երասխ, որպէս ասացաք, բղխելով ի Բարձր Հայոց՝ կ՚ընթանայ դէպ արևելք, ստէպ ման առնելով, որպէս թէ չուզեր թողուլ իւր ծննդեան երկիրը, մինչև կը խառնի ի Կուր, յետ ընդունելոյ ի ծոց իւր յաջմէ և յահեկէ անթիւ գետակներ, թողլով զկնի իւր մայրաքաղաքաց շար մը, յորոց ոմանց աւերակները միայն հազիւ կը նշմարենք այսօր, իսկ անունները պիտի յիշեմք մեր պատմութեան երկրորդ, այն է պատմական ժամանակին մէջ։ ԶԵրասխ երգեց առ մեօք սրտառուչ իւր գողտր արարատեան գաւառալեզուով Հայ բանաստեղծ մը ի Մայր Արաքսին, որ այնպէս ախորժելով կ՚երգուի Հայ ընկերութեանց մէջ։ Արմենիոյ բնական աշխարհագրութեան վրայ այսչափ բաւական համարելով գանք քաղաքականին։

6. Չէ պարտ կարծել, թէ Արմենիա կոչուած երկիրն, մեր պատմութեան նախնական ժամանակին մէջ, այն է առ Ասորեստանեօք և առ մարապարսկական իշխանութեամբ, էր մի միայն թագաւորութիւն, որպէս եղև յետոյ առ Արշակունեօք։ Հրէից գիրքերէն (Երեմ. ԾԱ. 27) գիտենք Արարատեան թագաւորութիւն մը, զորմէ առանց երկբայելոյ կարեմք ասել, թէ մեր Արարատեան նահանգն էր առ Երասխայ, նոյնչափ կամ աւելի ընդարձակ, որ և կարծի լինել Հերոդոտոսի Ալարոդն (Արարատ), և ըստ ոմանց արդի եւրոպացի գիտնոց՝ Ասորեստանի սեպագիր արձանագրութեանց մէջ կարդացուած Ուրարդին կամ Արարդին։

7. Թէ Եբրայեցւոց Արարատը մեր Այրարատն է, ընդարձակ նշանակութեամբ փոխանակ բոլոր Հայաստանի՝ բաց յԵրեմիայի վերոյիշեալ համարէն կը հաստատուի նաև Ծննդոց Ը. 4 համարէն, ուր ասի զտապանէն, թէ «Նստաւ ի լերինս Արարատայ»։ Նոյնպէս ունի նաև Սամարացին, որ ոչինչ ընդհատ հին է քան զԵբրայեցին. մինչ Ասորերէնը և Վուլկաթայն, թէպէտ հին, բայց յետոյ քան զԴարեհ՝ փոխանակ հին անուան Արարատայ ունին Արմենիա։ Ոնքեղոս և Արաբացին ասեն «Ի լերինս Կորդուաց», յանուն բնակչաց լերանց Հայաստանի, քանզի Կորդուք կամ Խաղտիք ըստ Հայոց, և Քաղդէացիք ըստ Յունաց (Քսեն. Խրտ. Կիւր. Գ. դպր.), էին ցեղ ինչ արիական (Քիւրտք), և որպէս տեսանի ի լեզուէ նոցա՝ ազգակից Մարաց։ Նաև ի հարց եկեղեցւոյ բազումք Արարատաւ կ՚իմանան Հայոց Մասեաց կամ Կորդուաց լեռները։ Եւսեբիոս Կեսարացի Գ. դարու եկեղեցական պատմիչը, կը յիշէ նաև քաղդէական աւան-

դութիւն մը է Բերոսոսէ, որ խօսելով ջրհեղեղէն՝ Հայաստան կը համարի տեղին ուր իջաւ տապանն։ Այն նաւէն, ասէ Բերոսոս, մաս մը դեռ կայ Հայաստանի Կորդուաց լեռները, և ոմանք նաւին վրայ ծեփուած նաւթէն քերելով կը բերեն իբրև դեղ բժշկութեան ցաւուց։ «Եւ ի նաւէն որ չոգաւ դադարեաց ի Հայս, և ցայժմ սակաւ ինչ մասն ի Կորդուացւոց լերինն փ Հայոց աշխարհին մնալ նշխար ասեն, և ոմանց քերել բերել ի ծեփածոյ նաւին նաւթոյ փ բժշկութիւն և ի գնչոց ցաւոց ինչ բժժանաց» (Եւս. Քր.)։ Նոյն Եւսեբիոս ամին նման հատուած մը կը բերէ Աբիւդենոսէ, որ Քսիսութրեայ (Նոյի) տապանին համար ասէ, թէ նստաւ Հայաստան, և թէ փայտը դեղ է բնակչաց երկրին.—«Եւ նաւն երթեալ յաշխարհին Հայոց դադարէր, և ի փայտից նորա դեղ օգնականութեան բնակչաց աշխարհին պարգևէր» (Անդ)։ Թերևս այս պատմութիւնէն յորդորուելով Յակոբ Մծբնայ հայրապետ, ինչպէս կը պատմէ մեր միամիտ պատմիչը Բուզանդ՝ փափաքեցաւ անձամբ տեսնել տապանը, և հրաշիւք ընկալաւ անոր մասն ինչ ի ձեռն հրեշտակի։ Այն նախնի դարուն պարզամիտ հաւատքը ցուցնելու համար մանաւանդ, քան իբրև պատմութիւն, կը դնենք հոս Բուզանդայ այն յօդուածը։ «Զայնու ժամանակաւ խաղաց գնաց մեծ հայրապետն Մծբնացւոց Յակոբ ի լերինս Հայոց, ի լեառնն Սարարադայ, ի սահմանս Արարատեան տէրութեանն, ի գաւառն Կորդուաց, տեսանել զփըրկական տապանն Նոյեան շինուածոյն, զի յայս լերին հանգեաւ նա ի ջրհեղեղէն։ Մինչդեռ ելանէր (Յակոբ) ընդ դժուարին ապառաժուտ լեռինն, խոնջեալ մօտ ի կատարն՝ ննջեաց։ Եւ եկն հրեշտակ Աստուծոյ և ասէ ցնա. Յակոբ, Յակոբ, ահա կատարեաց Տէր զխնդրուածս քո. այդ որ կայ ընդ սնարս քո՝ է ի փայտից տապանակին։ Եւ մեծաւ խնդութեամբ յառն կացեալ Յակոբայ՝ տեսանէր զտախտակն, իբրև զի կացնաւ հատեալ հանեալ ի մեծ ինչ փայտէ, և դառնայր անտի Յակոբ, առեալ զփայտն աւքեցուցիչ, զնշանակ Նոյեան տապանին, որ մինչև ցայսօր կայ պահեալ» (Բուզ. Գ. Ժ.)։ Ոչ այս պատմութիւնը և ոչ վկայութիւն Բերոսոսայ և Աբիւդենայ կրնան իբրև վաւերական ընդունիլ, կը ցուցնեն սակայն, թէ Ծննդոց Արարատն քրիստոնէութեան նախկին դարուց մէջ գրեթէ ստուգապէս կ'առնուէր փոխանակ Արմենիոյ. և մեր նպատակն է ցուցանել զայս, ոչ թէ տապանին Հայաստանի լերանց վրայ հանգչիլը։

8. Երեմիայի վերոյիշեալ համարն՝ Արարատեան թագաւորութեան հետ կը յիշէ, ըստ Եբրայական բնագրին, նաև Մինիոյ և Ասքանազայ թագաւորութիւններ իբրև սահմանակիցս Արարատայ,

և Հաւանականապէս բուն իսկ Հայաստանի մէջ.—«Կոչեցէք՝ ի վե-րայ նորա (Բաբելոնի) զթագաւորութիւնս Արարատայ, Միննեայ և Ասքանազեայ» (Եր. ԾԱ. 27, ըստ Եբր. ԲՆ.)։ Եթէ պարտ է հաւա-տալ Ասորեստանի բեւեռագիրները կարդացողներուն՝ այս արձանա-գրութեանց մէջ կը յիշուին, երբեմն սահմանակից և դրացի Ուրար-տուոյ՝ նաև Վան, Մուսասիր և Նայիրի, երբեմն ուրոյն թագաւորու-թիւնք։ Բայց թողունք բեւեռագիրներուն վկայութիւնը. ուրիշ եր-կիրներէ, զորս ի սկզբան մանր մանր իշխանութեանց կամ անկախ ցեղերու բաժանեալ և տակաւ միացեալ կը գտնենք, հետեւցնելով, և մանաւանդ Հրէից գրոց, գլխաւորապէս Երեմիայի յիշեալ գլխէն, որոյ հեղինակն չէ յետոյ քան զԶ. դար նախ քան զՔ.՝ կրնանք ստուգութեամբ ասել, թէ, գէթ այն դարուն մէջ՝ Արմենիա կոչուած երկիրն, նոյն իսկ Մեծ Արմենիա, կը բաժնուէր այլ և այլ թագա-ւորութեանց։ Թագաւոր բառն ի հնումն միշտ չէր նշանակեր իշ-խան մեծազօր և տէր մեծամեծ երկիրներու։ Թագաւոր անունը կը տրուէր շատ անգամ՝ առանձին քաղաքներու կամ սակաւ գիւ-ղից և աւանաց միայն տիրող քաղաքներու իշխանաց, զորս պարտ չէր մանաւանդ առաջնորդս կամ գլխաւորս կոչել։ Քանանու պէս փոքր երկրի մը մէջ կային երեսուն և մի թագաւորք, զորս նուա-ճեց Յեսու (Յես. ԺԲ. 9—24), թող զայլ բազումս որ անտարակոյս զերծան ի զինուց Յեսուայ։ Նոյն իսկ Ադոնիբեզեկ որ հզօր թա-գաւոր չէր՝ կը յիշէ եօթանասուն թագաւոր որոց յաղթած էր, և զորոց ձեռաց և ոտից բոյթ մատերը կտրած էր (Դատ. Ա. 4—7)։

**Թ.** Արմենիոյ թագաւորութիւնք յետ մնալոյ դարերով բոլորո-վին կամ ըստ մասին ազատ առ Ասորեստանեօք և Մարօք՝ իսպառ կորուսին ինքնօրէնութիւնն առ Դարեհիւ Վշտասպեայ, և երկիրը միացաւ, երբեմն նահանգ Պարսից, Արմինիք, կամ ըստ Յունաց Ար-մենիա անուամբ։ Յետ Աղեքսանդրի, Սելեւկեանք երկու բաժնե-լով զԱրմինին Պարսից՝ կոչեցին Մեծ և Փոքր Արմենիա (Հերոդ.։ Ար-ձանագր. Պիսիտունի։ Կիլլմէն, Հնախօս. արեւել.)։

**10.** Բայց Արմենիոյ այլ եւ այլ թագաւորութեանց մէջ ծա-նօթագոյնն առ մեզ է Արարատեան թագաւորութիւնն։ Ըստ մեզ այս Արարատեան թագաւորութեան ժողովուրդն է ազգային անուամբ Հայ կոչուած ցեղը, որոյ լեզուն յետ ժամանակաց, ի մէջ այլ գա-ւառական բարբառոց հնդեւրոպական լեզուաց արմենական ճիւղին՝ ընտրեցաւ լինել հասարակաց կամ արքունի լեզու առ Արշակու-նեօք, որք ի սկզբան տիրելով Արարատեան նահանգին՝ առ սակաւ սակաւ ընդարձակեցին զիշխանութիւն իւրեանց ի վերայ բովանդակ Մեծին Հայոց։ Դիտողութեան արժանի է, զի Բուզանդ ի Դ. դարուն

Արարատեան տէրութիւն կ'անուանէ Հայոց թագաւորութիւնը. «Գնաց մեծ հայրապետն Մծբնացւոց Յակոբ ի լերինս Հայոց, ի սահմանս Արարատեան տէրութեանն, ի գաւառն Կորդուաց» (Բուզ. Գ. Ժ.)։

**11.** Արարատայ սահմանակից ազգերն էին — ի հիւսիսոյ, անդր քան զԿուր մինչեւ Կովկաս՝ Դուրանեան կամ Արիո — դուրանեան ցեղեր, զորօրինակ Վիրք, Աղուանք և ուրիշ Կովկասեան ազգեր, Հրէից Գոգ և Մագոգը. յարեւելից՝ Զանդիկ ցեղեր, Արիք, այսինքն Մարք և Պարսք. ի հարաւոյ արեւելից՝ Արիո — քուշեանք, Ասորեստան. ի հարաւոյ՝ Արամ, այսինքն Սեմականք՝ Միջագետք և Ասորիք, և յարեւմտից՝ այլ և այլ թագաւորութիւնք հնդեւրոպական ցեղից, ըստ Հրէից՝ տուն Թորգոմայ։ Հնդեւրոպական ինքնագլուխ ցեղեր էին մանաւանդ Խաղտիք կամ Կորդուք՝ ըստ Հայոց, ըստ Յունաց՝ Քաղդէացիք, մեծաւ մասամբ յեղուզակաբարոյ և լեռնաբնակ։ Ի սոցանէ թուին լինել Նինուէի և Բաբելոնի վերջին հարստութեան թագաւորք (տես ի ստորեւ)։ Սոցա սերունդքն են նաեւ այժմու Քիւրտք։

**12.** Թէ ինչ քաղաքներ կային նախնական ժամանակին մէջ ի Հայս՝ չիք ուրեք յիշեալ ի հին պատմագիրս։ Հերոդոտոս և Քսենոփոն և այլք ի յոյն պատմագրաց, որ այլ և այլ առթիւ կը խօսին զնախնական ժամանակէ Հայոց՝ կը յիշեն հայեցի անուանս ինչ հայ արքայից և արքայորդւոց, ինչպէս Վարդան, Տիգրան, Տաւարշ, բայց քաղաք ամենեւին չեն յիշեր։ Զոմանց ի հին քաղաքաց կամ գիւղից, ինչպէս զԵրիզայ, զԱրմաւրէ և զԱշտիշատայ՝ կան պատճառներ ենթադրելոյ, թէ էին նախնական ժամանակի քաղաքներ, քանզի այս վայրք իբրեւ ազգային պաշտօնատեղիք կային յառաջ քան զՏիգրան մեծ։ Այս տեղերը նախնական ժամանակին մէջ եղած համարելու գլխաւոր պատճառ սա է, որ Վահագն, Անահիտ և Աստղիկ, իբրև հին դիք Հայոց, կը պաշտուէին այն տեղերը, և տեղիքն, մանաւանդ Աշտիշատ՝ էին ընդ իշխանութեամբ Վահունեաց, որ էին բնիկ քրմական ցեղ ի Հայս յանծանօթ ժամանակաց հետէ։ Սակայն և այնպէս այս անուններն — Արմաւիր, Աշտիշատ և այլք՝ առ մեծաւ Տիգրանաւ կ'սկսին յիշուիլ պատմութեան մէջ, և յայտնի պատմական յիշատակութիւն չունինք թէ ստուգիւ կային ի նախնական ժամանակին։ Արդարև Խորենացին Արմաւրի համար, Մարիբասեան աղբիւրէ մը առնելով ասէ, թէ էր մայրաքաղաք հին ինչ հարստութեան զոր Հայկազեան կ'անուանէ, և ստուգաբանէ ևս իբրև ծագեալ յանուանէ Արմայիսայ ուրումն, թոռին Հայկայ. — «Իսկ որդի նորա (Արմենակայ, որդւոյ Հայկայ) Արմայիս շինէ իւր

տուն բնակութեան ի վերայ ոստոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր» (Խոր. Ա. ԺԲ.)։ Բայց ինչպէս յետոյ պիտի տեսնենք՝ ոչ Մարիբասայ վկայութիւնը և ոչ ստուգաբանութիւնք Խորենացւոյն կարեն պատմական ստուգութիւն տալ մեզ՝ զԱրմաւիր նախնական ժամանակի մայրաքաղաք համարելոյ։ Սա միայն ստոյգ է, որ Արմաւիր, ինչպէս նաև Աշտիշատ, Երէզն, Անի (բերդաքաղաք), թէև թուականը և շինիչն անյայտ՝ Հայոց հին քաղաքներ և աւաններ էին, և ոչ Արտաշատայ, Վաղարշապատու, Դրւնոյ և այլոց պէս, որոց ոչ միայն ժամանակն, այլ և շինողն ծանօթ է։

**13.** Ի բևեռագիրս Ասորեստանի թագաւորաց, ինչպէս կը վկայեն արդի հնագէտներէն Օբերդ և այլք՝ Ուրարդիի (Արարատայ) և Վանայ թագաւորութեանց համար ասի, թէ ունէին շատ քաղաքներ, յորոց ոմանք պարսպաւոր էին։ Վանայ թագաւորութեան քաղաքներէն ոմանք յանուանէ յիշուած են ի միում յարձանագրութեանց Սարեուքինի։ «Իլլուսուն փանեցին, ասէ Սարեուքին, իմ արշաւանացս մօտենալը լսելով եւ արտաքս զօրօք իւրովք, և բարձրը լերանց հովիտներուն մէջ ամուր տեղեր կեցաւ։ Առի և ի մոխիր դարձուցի զքաղաք թագաւորութեան նորա զԻզիրդի, և զքաղաքսն զԻզիպիա և զԱրմիդ, ահագին ամրոցներ... Յարքունի տանէ նորա կալայ 250 հոգի, գրաւեցի 55 պարսպաւոր քաղաք, յորոց ութն հասարակ քաղաք էին, և մետասանն՝ անմատոյց բերդեր։ Իլլուսունի 22 քաղաքներն, զորս Ուրսա (Ուրարդիի թագաւորն) առած էր՝ Ասորեստանի հետ միացուցի»։ Այս արձանագրութենէն, եթէ շիտակ է ընթերցուածը՝ սաչափ միայն կը սորվինք, որ այն հին ժամանակին մէջ կային երևելի ամուր քաղաքներ ի Հայս։ Իզիրդի, Իզիպիա և Արմիդ անուանք բոլորովին անծանօթ են։ Վերջնոյն, այն է Արմիդի համար կրնայինք ասել, թէ կը մօտենայ Վարդգէսի երգին մէջ յիշուած Արտիմէդ քաղաքին. «Հատուած գընացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով, եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով, կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի» (Խոր. Բ. ԿԵ.). բայց այս Արտիմէդ էր յԱրարատեան նահանգին, ուր Արմիդի համար ասէ արձանագրութիւնը, թէ էր քաղաք Վանայ թագաւորութեան։

**14.** Եթէ հին շինուած մը կայ Հայաստանի մէջ՝ այն անտարակոյս Վանայ քարաբլրոյն վիմափոր անձաւներն են, ոլոց սկիզբը կորսուած է նախապատմական ժամանակին մէջ. և այսմ ապացոյց ոչ Խորենացւոյն պատմութիւնն է զշինութենէ Վանայ, և ոչ Ասորեստանի բևեռագիրներուն վկայութիւնը, այլ նոյն իսկ բերդին

շինուածոյն անօրինակ ոճը, և բեւեռագիրներուն նշանաւոր տարբերութիւնը, որ քան զբեւեռագիրս Ասորեստանի և Բաբելոնի աւելի մեծ հնութեան դրոշմը կը կրեն յինքեանս: Լընորման, թէպէտ արմենական կոչուած բեւեռագիրներն Ասորեստանի բեւեռագիրներէն առնուած, ուստի և քան զնոսա նոր կը համարի՝ կ'ընդունի սակայն, թէ ի մէջ այս երկու կերպ բեւեռագրութեան, այն է քաղդէականին և արմենականին՝ երևելի տարբերութիւն կայ: «Արմենական բեւեռագրաց մեծ մասը գաղափարաց նշաններ են, ասէ, այսինքն այնպիսի նշաններ զորս ամէն ազգ, գիտնալով այն նշանաց զօրութիւնը՝ կրնայ իւր լեզուաւ կարդալ, ինչպէս մեր այժմու արաբացի կոչուած թուանշաններն: Մինչ, կը յաւելու, Ասորեստանեայց և Բաբելացւոց բեւեռագիրներէն փոխ առնող արիական ազգեր՝ ձայնի նշաններ, այսինքն տառեր միայն առին, և կը գրէին այս նշաններով միայն, առանց գործածելու ամենևին գաղափարի նշան. Արմենիոյ բնակիչք, ընդհակառակն, առին մանաւանդ գաղափարի նշանները. նա մանաւանդ յարձանագրութիւնս իւրեանց քան զԱսորեստանեայս անգամ աւելի գործածած են գաղափարաց նշաններ: Վերջապէս արմենական արձանագրութեանց մէջ գրուածին կէսը գաղափարաց նշաններով է»: Լընորմանի այս դիտողութիւնը բաւական է ցուցնել, թէ թէպէտ ինք այլազգ կը կարծէ՝ արմենական բեւեռագրութիւնն աւելի հին է քան զասորեստանեայն, վասն զի գաղափարաց նշանք աւելի են արմենական դրութեան քան ասորեստանեայն մէջ. այնպէս որ եթէ այս երկու դրութեանց մին ի միւսէն առնուած է՝ զասորեստանեան դրութենէն ի դէպ է ասել զայս մանաւանդ քան զարմենականէն:

**15.** Վան էր հին քաղաք Հայոց ի Տոսպ գաւառի Վասպուրական նահանգին: Ըստ Խորենացւոյն՝ Ասորեստանի հռչակաւոր թագուհին Շամիրամ շինեց զայս քաղաք, ուստի և երկու տեղ քաղաք Շամիրամայ կ'անուանէ զՎան նոյն Խորենացին: «Հրաման տայ (Վաղարշակ) զքաղաքն Շամիրամայ նորոգել» (Խոր. Բ. Ը.), և Տիգրանայ համար ասէ (Բ. ԺԹ.). «Հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զգերիսն Հրէից որ ի Մարինացւոց՝ ի քաղաքն Շամիրամայ», զոր այլուր կը կոչէ Վան Տոսպայ. «Եւ զայն Հրեայսն որ նոյն հրէութեան օրինօք կային ի Վան Տոսպայ, զոր ածեալ էր Բարզափրանայ Ռշտունւոյ յաւուրս Տիգրանայ՝ բնակեցոյց Շապուհ յԱսպահան» (Խոր. Գ. ԼԵ.): Ըստ Խորենացւոյն Շամիրամ այս քաղաքը շինեց իբրև ամարանոց, ուստի և նոյն պատմիչը կը կոչէ զՎան «քաղաք ամարանոցի».—«Սա (Շամիրամ) հանապազ յամառնայինսն, ի խաղալն իւր ի կողմանս Հիւսիսոյ ի քաղաքն ամարանոցի զոր շինեաց ի

Հայս՝ կողմնապետ Ասորեստանի և Նինուէի թողու զԶրադաշտ մոգ և նահապետ Մարաց» (Խոր. Ա. ԺԷ.)։ Ահա Խորենացւոյ պատմութիւնն զշինութենէ Վանայ.

**16.** «Այս գործէն (Արայի պատերազմէն) ետքը Շամիրամ կը կենայ աւուրս ինչ ի դաշտին, որ յանուն Արայի կը կոչուի Այրարատ, և յետոյ կ'երթայ դէպի հարաւ զբօսնուլ ծաղկաւէտ հովիտներու և դաշտերու մէջ, քանզի ժամանակն ամառնային էր։ Եւ տեսնելով երկիրը գեղեցիկ, օդը մաքուր, յստակ աղբիւրներ և կարկաջասահ գետեր՝ ասէ. Այսպիսի հովասուն և ջրարբի տեղ վայել է մեզ քաղաք և արքունիք շինել բնակութեան համար, որպէս զի չորս եղանակաց մին (զամառն) անցունենք ի Հայս, իսկ մնացեալ երեք զով եղանակներն՝ ի Նինուէ։ Եւ շատ տեղեր անցնելով կու գայ աղի ծովակին արևելեան կողմը, և կը տեսնէ առ եզերբ ծովուն լեռնադաշտ, որոյ երկայնութիւնն էր յարևելս կոյս և ի հիւսիսոյ ունէր զառ ի վայր, իսկ ի հարաւոյ բլուր, որ ահա և ուղղորդ կը բարձրանար դէպ երկինք։ Բլրոյն հարաւային կողմը կար հովիտ [դաշտաձև, ձիգ յարևելս կոյս, իսկ յարևմտից հիւսիսոյ՝ ձորաձև մինչև յեզր ծովուն։ Ի միջացին բլրոյն և հովտին կը հոսէին քացցր ջրոյ առուք, որ լեռներէն իջնելով և ձորձորներէ ու հովիտներէ անցնելով, ոմանք նաև լերանց ստորոտէն բխելով գային միանային և լինէին գետ։ Կային նաև ոչ սակաւ շէնք ի հովտին, յաջմէ և ի ձախմէ գետոյն. իսկ յիշեալ բլրոյն արևելից կողմանէ էր լեառն փոքրագոյն։—«Ձկնի այսպիսի երաց աջողութեան դադարեալ Շամիրամայ աւուրս ինչ սակաւս ի դաշտին, որ անուանեալ կոչի յանուն Արայի Այրարատ՝ ելանէ ի լեռնակողմանս երկրի հարաւակողմանն, քանզի ժամանակ ամառնային էր, զբօսնուլ կամելով ի հովիտս և ի դաշտս ծաղկաւէտս։ Եւ տեսեալ զգեղեցկութիւն երկրին և զօդոցն մաքրութիւն և զաղբերացն յստակագոյն բխմունս և զկարկաջասահութիւն գետոց բարեգնացից՝ Պարտ է մեզ, ասէ, յայսպիսում բարեխառնութեան օդոց և մաքրութեան ջուրց և երկրի քաղաք և արքունիս շինել բնակութեան, որպէս զի զչորրորդ մասն ի բոլորմանէ տարւոյն, որ է ամառնայինն եղանակ, ըստ ամենայն բարեվայելչութեան անցուցանեմք ի Հայս, և զայլն ևս երիս որոշմունս օդոցն զովութեան տածիցեմք ի Նինուէ։ Եւ անցեալ ընդ բազումս ի տեղեաց՝ գայ հասանէ յարևելից կողմանէ յեզր ծովակին աղւոյ, և տեսեալ առ եզերբ ծովուն երկայնաձև բլուր մի, որոյ նիստ երկայնութեանն ի մուտս կոյս արեգական սակաւ ինչ առ ի կող լեալ ի հիւսիսոյ, իսկ ի միջօրէ կողմանէ դէպ ուղիղ առ երկին հայելով, քարանձաւ

կանգուն անշէգ, և ի սմանէ զհարաւով բացագոյն հովիտ իմն դաշտաձև երկայնաձիգ յարևելից կողմանէ լերինն, իջանելով յեզր ծովուն՝ ընդարձակ և գեղեցիկ ձորաձև. որոց (բլրոյն և հովտին) ընդ մէջն հոսանք ջուրց բարեհամաց ի լեռնէն իջանելով, ի ծործորոց և ի հովտաց ծորեալք և ի հիմանց փեզկից լերանց միաւորեալք՝ ի ծաւալումն գետոց պերճանայլին. և շէնք ոչ սակաւք ի հովտաձև ձորակին յաջմէ և յահեկէ ջուրցն յօրինեալք. յարևելից կողմանէ հաճեցեալ բլրոյն՝ լեառն մի փոքրագոյն»։

Այս տեղւոյն վրայ, յաւելու Խորենացին, հիանալով Շամիրամ՝ հրամայեց շինել քաղաք և բերդ. և իսկոյն երկոտասան հազար գործաւորք, ասորեստանցի և հպատակ, և իւր ընտիր արուեստաւորներէն վեց հազար հոգի, հմուտ գործոյ փայտի, քարի, պղնձոյ և երկաթոյ՝ կատարեցին փութով հրամանը։ Նախ շինեցաւ գետոյն լայն և բարձր ամբարտակը (երկու քովի բարձրութիւնները) մեծամեծ քարերով, և շաղախը որ գործածուեցաւ՝ էր աւազախառն կիր, որ մածնլով այնպէս հաստատուն եղած է, որ եթէ պարսատկի համար անգամ քար մը խլել փորձէ ոք՝ չէ կարող. իսկ ամբարտակին ծեփն այնպէս ողորկ է, որ թուի թէ հալած ճարպ թափուած է։ Այսպէս շինեցաւ ամբարտակ գետոյն մինչև ի տեղին, ուր սահմանեալ էր շինել քաղաքը։ Այս ամբարտակին պատառուածներուն մէջ, վասն ամրութեանն, ինչպէս կը լսենք, ասէ Խորենացին, աւազակներ և փախստականներ կ'ապաւինին։—«Աստ իմն ակնկառոյց լեալ այլասիրտն այն և կաթոտն Շամիրամ՝ հրաման տայ բիւրուց և երկու հազար արանց անարուեստից գործաւորաց յԱսորեստանեայց և յայլոց իշխելոց, և վեց հազար իւրոց ընտրելոց յամենայն արուեստաւոր գործաւորաց փայտի և քարի, պղնձոյ և երկաթոյ, որք ամենեքին կատարեալք իցեն յարուեստգիտութեան՝ ածել անխափան ի փափագեալ տեղին. և գործն հաւասար հրամանին առնայր զկատարումն։ Եւ վաղվաղակի ածեալ լինէին բազմութիւն խառնիճաղանճ գործաւորացն և բազմարուեստից հանճարեղաց իմաստնոցն։ Եւ հրամայէ նախ զամբարտակ գետոյն ապառաժիւք և մեծամեծ վիմօք շինել, կրով և աւազով մածուցեալս, անբաւ լայնութեամբ և բարձրութեամբ, որ կայ հաստատուն, որպէս ասեն, մինչև ցայսօր ժամանակի։ Եւ ի պատառուածս նորին ամբարտակի գետոյն այժմ, որպէս լսեմք, մարդիկ աշխարհին ի հէն և ի գաղթականս փախստեամբ ամրանան, իբր ի ծայրս քարանձաւաց լերանց ամրացեալք։ Եւ թէ զփորձ առնուլ դէպ ումեք լինիցի՝ և ոչ իբր պարսատկաց քար մի արժանաւոր ի շինուածոյ ամբարտակին խլել ոք զօրեսցէ, թէև մեծաւ աշ-

խստութեամբ ջանայցէ։ Եւ ի հեղուածս արուեստին որ զքարամբք՝ հայեցեալ ուրուք՝ որպէս ճարպոյ ինչ հեղման հայեցողացն երեւեցուցանէ կարծիս։ Եւ այսպէս ընդ բազում ասպարէզս անցուցեալ զամբարտակն՝ հաստուցանէ ի նկատեալ տեղի քաղաքին»։

Հոն հրամայեց Շամիրամ, ասէ Խորենացին, գործաւորները դաս դաս բաժնել, և իւրաքանչիւր դասուն վրայ քաջ արուեստաւորներէն վարդապետներ (վարպետներ) կարգելով սկսանել քաղքին շինութիւնը։ Այսպէս մեծ աշխատութեամբ և ջանիւ յետ սակաւ ամաց շինեցաւ նաև քաղաքն, ամուր պարսպօք և պղնձի դրամբք։ Քաղաքին մէջ շինուեցան հոյակապ տուներ կրկնայարկ և եռայարկ, այլևայլ տեսակ և այլևայլ գոյն քարերէ։ Իւրաքանչիւր թաղ տարբեր գունով կ'որոշուէր, և փողոցներն էին լայն և լուսաւոր։ Նաև չքնաղ և զարմանալի բաղանիս շինել տուաւ քաղքին գլխաւոր տեղերը։ Գետոյն ջրոյն մէկ մասը բաշխեց քաղաքին մէջ, ուր որ կարօտութիւն կար ջրոյ, և յոռոգումն պարտիզաց և բուրաստանոց, իսկ մնացեալ մասը՝ ծովին երկու կողմը յաջ և յահեակ, յոռոգումն շրջակայ տեղեաց։ Քաղքին արևելեան, հիւսիսային և հարաւային կողմերը զարդարեց դաստակերտօք, գեղեցիկ պարտէզներով և այգեստանօք, և յետ յարդարելոյ զամենայն այսպէս հոյակապ և հռչակաւոր՝ գաղթականաց բազմութիւն բերելով բնակեցուց հոն։—«Անդ հրամայէ զամբոխն ի բազում դասս որոշել, և ի վերայ իւրաքանչիւրոց դասուց զընտիրս ի ճարտարացն վարդապետս կարգել, և այնպէս ի սաստիկ ճգնութեան պահեալ՝ յետ սակաւ ամաց կատարէ զհրաշալին, ամրագունիւք պարսպօք, հանդերձ դրամբք պղնձակերտիւք։ Շինէ և ընտիր ընտիրս և բազումս ի մէջ քաղաքին ապարանս ի պէսպէս քարանց և ի գունից զարդարեալս, կրկնայարկս և եռայարկս, գեղեցիկ գունիւք և ընդարձակ փողոցիւք զկողմանս քաղաքին որոշելով։ Շինէ զչքնաղս ոմանս և զզարմանալոյ արժանաւորս ըստ պիտոյից ի միջոցաց քաղաքին լուալիս։ Եւ զմասն ինչ գետոյն ընդ մէջ քաղաքին բաշխեալ՝ գնացուցանէ ի պէտս ամենայն պիտոյից և յարբուցմունս բուրաստանաց և ծաղկոցաց, և զայլն զեզերբ ծովակին յաջմէ և յահեկէ, քաղաքին և բովանդակ շրջակային յարբուցումն։ Եւ զամենայն արևելեան և զհիւսիսային և զհարաւային կողմանս քաղաքին զարդարէ դաստակերտօք և սաղարթիւք ծառոց վարսաւորաց, զանազանեալք ի պտուղս և ի տերևս, և բազումս բազմաբերս և գինեբերս ի նմա տնկեաց այգիս։ Եւ ամենայնիւ հոյակապ և հռչակաւոր զպարսպեալն յօրինէր, և անթիւ բազմութիւն մարդկան ի ներքս բնակեցուցանէր»։

**17.** Բուն Վանայ բերդին կամ քարաբլրոյն գալով Խորենացին

կը խօսի այսպէս. Իսկ ինչ որ անձաւին (այսպէս կ'անուանէ Խորենացին քարաբլուրը) վրայ, որ քաղքին (արեւելեան) ծայրն է, յօրինեց՝ այնպէս հրաշալի են, որ ամէն մարդոյ հնար չէ հասկնալ և պատմել։ Նախ բլրոյն գագաթը պարսպելով՝ շինեց ի նմա թագաւորական շինուածներ ծածուկ և ահագին ճամբաներով, ընդ որս ելնել և իջնել սոսկալի է։ Թէ ո՛րպիսի շինուածներ էին ասքա՝ մեզ անծանօթ է, ուստի չենք կարող նկարագրել. սաչափ միայն՝ ասեմք, թէ բոլոր թագաւորական շինուածոց մէջ առաջին է այս և չքնաղագոյն։ Իսկ անձաւին (քարաբլրոյն) արեւելեան կողմն, ուր կարծրութիւն ապառաժին այնպիսի է, մինչև հազիւ կարել ումեք երկաթով գծել ինչ՝ պէս պէս սրահներ և սենեակներ և գանձու տուներ և երկար վիհեր բանալ տուած է, բայց թէ ո՛րպիսի հնարիւք՝ չէ յայտ։ Նաև քարերուն վրայ, որպէս թէ մոմոյ վրայ՝ քանդակել տուած է գիրեր, որոց տեսիլն միայն կը հիացնէ զտեսողս։—«Իսկ զծայր քաղաքին և որ ինչ ի նմանէ գործոյ հրաշակերտութիւնք՝ բազմաց ի մարդկանէ ոչ հաստ. լեալ, և ոչ պատմել է կարողութիւն։ Զորոյ (քարաբլրոյն) պարսպեալ զգագաթն՝ գժուարամուտս ամանս և դժուարելանելիս ի նմա յօրինէ շինուածս արքայանիստս, և ծածուկ իմն ահագին։ Որոյ որպիսութիւն գրութեանն յօրինուածոյ ոչ է լսելիս մեր հասեալ ճշմարտութեամբ յումեքէ, և ոչ մեք ի պատմութիւնս հիւսել հաւանիմք. այլ ասեմք միայն, թէ ամենայն թագաւորական գործոց, որպէս լուաք՝ առաջին և վեհագոյն համարեալ։ Իսկ զընդդէմ արեգական կողմն անձաւին, ուր և ոչ գիծ մի երկաթոյ այժմ վերագրել ոք կարէ՝ զայսպիսի կարծրութիւն նիւթոյ պէսպէս տաճարս և սենեակս օթից և տունս գանձուց և վիհս երկարս, ոչ գիտէ ոք թէ որպիսեաց իրաց պատրաստութիւն հրաշակերտեաց։ Իսկ զամենայն երեսս քարին իբր գրչաւ զմոմ հարթել՝ բազում գիրս ի նմա գրեաց. որոյ հայեցուածն միայն զամենայն ոք ի զարմանս ածէ» (Խոր. Ա. ԺԶ.)։

18. Այս է ահա անուանեալ Շամիրամակերտի նկարագիրը. այլ թէ ուստի առած է Խորենացին այս պատմութիւնն՝ յայտնի չէ։ Խորենացին չի խօսիր իբրև ականատես, և ոչ իսկ ի Մարիբասայ առած կը պատմէ։ Զիարդ և իցէ՝ Խորենացւոյն նկարագրին պատմական պարագաները, զորօրինակ Շամիրամայ Հայաստանի մէջ շրջիլը, ապա Վանայ կողմերը գալով հաճիլը տեղւոյն գեղեցկութեանը, հուսկ յետոյ հազարներով գործաւորներ և արուեստագէտներ բերել տալով, ոչ միայն քարաբլրոյն վրայ այն վիմափոր սենեակներն, այլ և քաղաքը պալատներով, բուրաստաններով և ջրմուղներով իբրև ամարանոց շինել տալը՝ շինծու են։ ԶՇամիրամ պատմական անձ

ենթադրելով առ Նինոսիւ՝ քարաբլրոյն վրայ քան զՆինոս հնագոյն շինուածներն անգամ, որպիսի են վիմափոր սենեակներն անոր ընծայել՝ պատմական հիմ չունի։ Քարաբլուրը շատ հին ժամանակներէ հետէ կոչուելով յանուն Շամիրամայ՝ պատճառ տուած է յետնոց կարծել, թէ Շամիրամ էր շինիչ այն հրաշակերտին, ուստի և վերայիշեալ պատմութիւնը ստեղծել. բայց թէ ինչ պատճառաւ այն բերդն ի վաղուց հետէ կոչուած է յանուն Շամիրամայ՝ զայսմանէ ի ստորև։

**19.** Արդի ճանապարհորդներէն գերմանացին Շուլց, որ քան զայլս աւելի ճշդիւ քննած և մանր նկարագրած է զՎան և մանաւանդ քարաբլուրը՝ Վանայ մէջ կամ մօտ ոչ ամբարտակ գտաւ և ոչ հին շէնք, այլ միայն հին ջրմղի մը մնացորդները, որոց պատերը կային ուրեք ուրեք առանց շաղախի իւրեանց ծանրութեամբ միայն զիրար բռնող մեծամեծ քարերէ։ Շուլց այս ջրմղին մէջ կըրցաւ կանգուն երթալ իբր քսան քայլ։ Քարաբլրոյն գալով՝ Շուլց Խորխոռ կոչուած հարաւային արևելեան կատարին ստորոտէն,—քանզի քարաբլուրը մին քան զմիւսն բարձր երեք կատար ունի,—գտաւ դէպ ի վեր բերդը կիսափուլ աստիճանաւոր ուղի մը, որ կը հանէր ի ձև ամփիթէատրոնի շինուած հարթ տեղեր, թերևս նստելով դիտելու համար սքանչելի տեսարանը, որ բլրէն նայողներուն առջև կը բացուի ամբաւ տարածութեամբ։ Շուլց գտաւ նաև քայքայեալ շինուածոց մնացորդներ 4 կամ 5 ոտք երկայն, 3 կամ 4 ոտք լայն քառակուսի քարերէ առանց շաղախի յեց իրարու վրայ, յորոց ոմանց վրայ կան բևեռագիրք։ Բայց քան զամենայն հիանալին, զոր տեսաւ Շուլց քարաբլրոյն վրայ՝ էին ապառաժին մէջ փորուած մէջէ մէջ սենեակները, ծեփեալ կամ բռեալ ողորկ և կարծր նիւթով մը։ Շուլց բոլոր այս սենեակներուն մէջ չգտաւ ամենևին նկար կամ պատկեր, որ Ասորեստանեայց հին շինուածներուն, ինչպէս Խորսապատու և Գույունճուգի պալատանց մէջ յաճախ են։ Այս սենեակներուն մէջ դիտողութեան արժանի բանն էր պատերուն փայլուն և անհնարին կարծր ծեփը և խորշերը, յորոց ոմանք ունէին ի միջոցի շատ խոր ծակեր։ Միով բանիւ, Վանայ քարաբլրոյն վիմափոր սենեակները, թէպէտ հին և մեծագործ՝ չունին Ասորեստանցւոց շինուածներուն ոճը, և ոչ իսկ Շամիրամայ են։

**20.** Շամիրամաւ, որ դիցաբանական անուն է՝ կը հասկցուի նախապատմական ժամանակ։ Հին արևելեան ազգեր սովոր էին Շամիրամայ ընծայել հին մեծամեծ շէնքեր՝ որոց ոչ թուականը և ոչ շինողը ծանօթ էր։ Բայց Վանայ բերդին շինութեան Շամիրամայ ընծայուելուն պատճառն այս է։ Շամիրամ, ըստ Ասորեստանցւոց

Մելիտտա և ըստ Ասորւոց Աստարտ, ըստ Յունաց Արտեմիս, ըստ Հռոմայեցւոց Տիանա և ըստ Հայոց Անահիտ՝ էր հին արևելեան աստուածուհի, և կը պաշտուէր Քուշեան և Քամեան ազգերէ իբրև գիջութեան կամ խոնաւութեան միջոցաւ յառաջ բերող ծննդական զօրութիւն։ Ի բնէ կամ արուեստիւ ջրաբբի և լեռներէ պաշարեալ պտղաբեր և զուարճալի հովիտներ նուիրական կը համարուէին այն հին ազգերէն այս աստուածուհւոյն։ Այս Նախապատմական Անահիտ չունէր ամենևին արձան․ պաշտօնատեղիք նորա էին բարձր և անմատոյց տեղեր շինուած ամրոցներ, որ միանգամայն բանտ էին պատերազմի գերիներու, որ հաւանականապէս կը զոհուէին աստուածուհւոյն։ Մալադիոյ, Նօշայ մօտ և ուրիշ տեղեր կային ի հնումն այսպիսի ամրոցք, որ Շամիրամայ գործ կը համարուէին (Բիդդ. Արևմտ. Աս. Գ. 2)։ Նաև առ Քանանացիս, որ Քուշեան ցեղին երևելի ճիւղն էին, զոր գիտունք Քամեան կ'անուանեն՝ անտառախիտ ջրաբբի բարձունք նուիրական էին Աստարտայ, որ Քանանացւոց Շամիրամն, այսինքն Անահիտն էր։ Նոյնպէս առ Իսրայելացիս իբրև Աստուծոյ հետ հաղորդակցութեան յատուկ տեղեր նուիրական համարուած էին բարձր լերինք։ Սինա լեռը ելաւ Մովսէս՝ Եհովայի հետ խօսելու։ Նոյնպէս մեծամեծ յայտնութիւնք և տեսիլք լեալ կը պատմուին ի Գիբս ի Քորեբ, ի Կարմեղոս և ի Թաբոր։ Սամարացւոց տաճարը Գարիզին լերան վրայ էր։ Իսրայելացիք սովոր էին զոհել բարձր տեղեր ոչ միայն օտար աստուածոց, այլ և աստուծոյն իւրեանց Եհովայի, և զայս առնէին ոչ միայն այն թագաւորք, զորոց ասեն Գիրք, թէ «արարին չար առաջի տեառն», այլ և սրբագոյնք և սիրելիք Եհովայի, ինչպէս Սամուէլ, Դաւիթ և Սողոմոն։ Սամուէլ Սիփ եկած էր, հոն մօտ նուիրական բարձր տեղ մը զոհ մատուցանելու, երբ Սաւուղ էշերուն համար հարցունելու եկաւ։ «Վասն աւուրս եկեալ է ի քաղաքս,—ըսին աղջկունք ջրուորք, որոց հանդիպեցաւ Սաւուղ քաղքէն դուրս,—զի զոհ է այսօր ժողովրդեանն ի բարձունս․ յորժամ մտանիցէք ի քաղաքդ՝ գտանիցէք զնա ի քաղաքիդ, մինչչև ելեալ իցէ նորա ի բարձունսն» (Ա. Թագ. Թ. 12)․ և Սողոմոնի համար գրուած է, թէ «Սիրեաց Սողոմոն զՏէր՝ գնալ ըստ հրամանաց Դաւթի հօր իւրոյ բայց ի բարձունս Մւ Նա (իբրև զհայր իւր) զոհէր և արկանէր խունկս։ Եւ յարեաւ գնաց արքայ ի Գաբաւոն զոհել անդ, զի նա առաւել բարձրագոյն էր» (Գ. Թագ. Գ. 4)։ Շամիրամայ անունն իբրև Նախապատմական Անահիտ, զարմանալի արուեստը և անօրինակ ոճը, որով շինուած են վիմափոր սենեակներն յղկեալ և ողորկեալ որմովք, բևեռագիրներուն կերպը և լեզուն, բոլորովին տարբեր Ասորես-

տանի և Քաղդէացւոց բևեռագիրներէն, կը ցուցնեն, թէ այս հրաշակերտը քան զԱսորեստանի և Քաղդէացւոց հարստութիւնն հին է, Քուշեան ճարտարապետութեան մնացորդ, ուստի և նախապատմական. միով բանիւ այնպէս հին, որ թերևս Հայ ցեղն անգամ դեռ եկած չէր իւր գաղթականութեան վերջին տեղին, Արարատ: Ուստի, ըստ մեզ, ի զուր է ջանալ հայերէնով քակել Վանայ բևեռագիրները. այսպիսի ջանքեր չյաջողեցան ցարդ, և նոքա, որ յոգնեցան այս գաղափարով՝ ոչ այլ ինչ տուին մեզ, եթէ ոչ երևակայեալ հայերէն մը:



## ԳԼՈՒԽ Գ.

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱԶԳԱՑ Ի ՆԱԽՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՀԱՅՈՑ:

*1. Այլ աղբիւր պատմութեան Հայոց նախնական ժամանակի.—*

## Ա. ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՔ:

*2. Աշխարհագրական դիրք Ասորեստանի. Աղիաբէն: 3. Ասորեստանեայք ըստ յոյն պատմագրաց: 4. Ասորեստանի թագաւորք ըստ Եւսեբեայ: 5. Արդի հնաքանք՝ զԱսորեստանեայց. Մասքերոյ: 6. Բեւեռագիրք: 7. Ասորեստանի թագաւորք ըստ բեւեռագրաց: 8. Ասորեստանի պատմութիւնն ըստ բեւեռագրաց: 9. Թէ ինչ հաւատք կրնայ ընծայուիլ բեւեռագրաց: 10. Ասորեստանի պատմութիւնն ըստ Հրէից գրոց. Ծննդոց գիրք. Դ. գիրք թագաւորաց: 11. Անկումն Ասորեստանի ապացուցեալ ի Հրէից գրոց: 12. Հրէից գրոց վկայութեան վաւերականութիւնը զԱսորեստանէ: 13. Ասորեստանցիք արտաքոյ Ասորւոց եւ Պաղեստինու: 14. Արմենիա առ Ասորեստանեօք. Արարատ՝ յառման Բաբելոնի. Ցառաջ քան զառումն Բաբելոնի առ Սենեքերիմաւ. Բնիկ աւանդութիւն մը: 15. Ցիշատակութիւն մի ի Դիոդորոսէ. Բարզանէս անունը: 16. Հայք առ Ասորեստանեօք՝ ըստ Խորենացւոյն: 17. Արմենիա առ Ասորեստանեօք ըստ արդի հնաքանից. Սալմուքինի արձանագրութիւնը: 18. Բեւեռագիրներէն հանուած պատմութեան վրայ դիտողութիւն: 19. Ասորեստանի անկումն ըստ հասարակ աւանդութեան, եւ ըստ Հրէից գրոց: 20. Բաբելացիք յետ անկման Ասորեստանի:*

**1.** Որովհետև, որպէս ասացաւ, մասնաւոր ազգային պատմութիւն չունինք զնախնական ժամանակի Հայոց՝ այս պակասը լեցունելու համար հարկ է դիմել այն ազգերուն պատմութեանը, որ

իբր տիրող՝ ընդհանուր ազդեցութիւն ունեցան գրեթէ բոլոր Ասիոյ վրայ։ Այս տիրող ազգերն են—Ա. Ասորեստանցիք մինչև ի սկիզբն Ե. դարուն նախ քան զՔր., յետոյ Բ. Մարք և Պարսք մինչեւ ի սկիզբն Գ. դարուն, և անտի ապա Գ. Յոյնք, այսինքն Մակեդոնացիք և Սելևկեանք մինչև Տիգրան մեծ։

## Ա. ԱՍՈՐԵՍՏԱՆԵԱՅՔ:

**2.** Հինն կամ բուն Ասորեստան ունէր իւր սահմանակից ի հիւսիսոյ զլեռնայինն Արմենիա, յարևելից՝ զՄարս, ի հարաւոյ՝ զՊարսըս և յարևմտից՝ զԲաբելոն և զՄիջագետս, յորմէ կը բաժնուէր ըստ Սեմականաց Դկլաթ և ըստ հնդեւրոպականաց Տիգրիս կոչուած գետով։ Այսպէս Ասորեստան յերից կողմանց պաշարեալ էր հնդեւրոպական կամ արիական ցեղերէ. յարևմտից միայն, այն է յայնկոյս Տիգրիսի բնակեալ ազգերն էին սեմական կամ արամէական, ուստի և համացեղ, եթէ ոչ տիրող ցեղին՝ գէթ ժողովրդեան երևելի մասին։

Ասորեստանի գլխաւոր մասն էր ի Յունաց Ադիաբէն կոչուած հիւսիսային գաւառն, որ բուն սահմանակից էր ի հիւսիսոյ Հայոց Մոկաց, Կորճէից, և Հեր և Զարևանդ (Պարսկահայք) կոչուած գաւառներուն, և մեր հնագոյն մատենագիրք, Ագաթանգեղոս, Բուզանդ և Խորենացին՝ Ասորեստանիւ կ'իմանան այս հիւսիսային մասը, զԱդիաբէն միայն։ Արդարև այս մասին մէջ էին գլխաւոր քաղաքք Ասորեստանի, Քաղա, Ռոբովթ և Ռէսէն (Ծննդ. Ժ, 11), հանդերձ հզօր և անուանի մայրաքաղաքաւ Նինուէիւ։ Ըստ հին աւանդութեան իրիք, որ յիշուած է ի գիրս Ծննդոց (Ժ. 11, ըստ Եբր. բնագր.) Նեբրովթ շինեց այս քաղաքները. աւանդութիւն մը, որ որչափ և աղօտ է՝ կը ցուցնէ սակայն, թէ Քուշեան երկիր էր նախապէս Ասորեստան, քանզի ի Գրոց իբրև անձ յիշուած քուշեան Նեբրովթ՝ արևելեան աւանդութեան մէջ (Րիդգէր, Արևմտ. Աս. Գ. 1.) Քուշեան ցեղին յատուկ անուն էր։

**3.** Ըստ Կտեսեայ, Դիոդորոսի և այլոց՝ Ասորեստանի վրայ մինչև մեր ժամանակն ընդհանրապէս կը կարծուէր, թէ Բէլ ոմն եղաւ հիմնադիր Ասորեստանի տէրութեան իբր 2,000 ամօք յառաջ քան զՔր., թէ Բելայ որդին և յաջորդը Նինոս և կինը Շամիրամ ընդարձակեցին Ասորեստանի տէրութիւնը, նուաճելով զՀայս, զՄարս, զՀնդիկս և զայլ բազում ազգս, և մեծամեծ շէնքեր թողին, մանաւանդ Շամիրամ, Ասիոյ այլևայլ կողմերը, և թէ յետ Նինուասայ, որդւոյն Նինոսի և Շամիրամայ՝ տիրեցին ծոյլ և թուլամորթ

թագաւորներ մինչև Սարդանապաղ կամ Թոնոս Կոնկոլերոս, որ պաշարուելով ի միացեալ զօրութենէ Մարաց և Բաբելացւոց՝ այրեց զինք հանդերձ ընտանեօք յարքունիս իւր, և այնպէս վերջացաւ Ասորեստանի կամ Նինուէի թագաւորութիւնն իբր 759-ին նախ քան զՔր.։

4. Եւսեբիոս Կեսարացի, Դ. դարու եկեղեցական պատմիչն, ի Բելայ մինչև Սարդանապաղոս, այսինքն 1,993-էն մինչև 759, կուտայ Ասորեստանի թագաւորաց անուններն որ ի ներքոյ, առնլով ի Կտեսեայ յոյն պատմչէն, որ ծաղկեցաւ Ե. դարուն առաջին կիսուն նախ քան զՔր., և յորմէ կ'առնու նաև Դիոդորոս Սիկիլացի, ուրիշ յոյն պատմիչ Կեսարու և Օգոստեայ ժամանակ.

| | | |
|---|---|---|
| Բեղոս | Մանսկիաղիոս | Պանիաս |
| Նինոս | Սփերոս | Սոսարմոս |
| Շամիրամ | Մամիւղոս Բ. | Միտրէոս |
| Նինուաս | Սպարետոս | Տեւտամոս Ա. |
| Արիոս | Ասկատադէս | Տեւտէոս |
| Արաղիոս | Ամիւնտէս | Արաբեղոս |
| Քսերքսէս | Բեղոքոս Բ. | Կաղաւոս |
| Արմամիթրիտէս | Ատոսսաս | Անաբոս |
| Բեղոքոս Ա. | Բեղատորէս | Բաբիոս |
| Բաղէոս | Ղամպրիդէս | Տեւտամոս Բ. |
| Սեթոս | Սոսարէս | Դերկիւղոս կամ |
| Մամիւղոս Ա. | Ղամպարէս | Սարդանապաղ |

5. Արդի հնաբանք, իբրև անվաւեր՝ չեն ընդունիր ո՛չ այս անունները, և ոչ Նինոսի և Շամիրամայ պատմութիւնը, զոր առասպել կը համարին։

Արդի հնաբանք, որոց գլխաւորն է Օբերդ, ի բևեռագիրս որ ցարդ գտնուած են՝ Նինոսի և Շամիրամայ ընծայուած աշխարհակալութեանց յիշատակութիւնը չեն գտներ։ Միայն Նինիփբալլուքին անուն թագաւորի մը համար կը գտնեն գրուած, թէ Ասորեստանի տէրութիւնը կազմեց և առաջին եղաւ որ հաստատեց հզօր բանակ մը։ Օբերդ բևեռագիրներուն Նիննուբալլուքինը կը համարի Յունաց Նինոսը, որոյ թագաւորութեան սկիզբը, համաձայն Հերոդոտոսի, կը դնէ ԺԳ. դարուն, այն է իբր 1,300-ին սկիզբը, և Կտեսեայ Շամիրամն առասպելեալ անձ համարելով՝ պատմական Շամիրամայ անունը կը գտնէ ուրիշ արձանագրութեան մէջ, իբրև կին Բեղոքոսի Բ-ի, ի վախճանի Թ. դարուն, այն է 800-ին նախ քան զՔր., համաձայն Հերոդոտոսի, որ Շամիրամայ համար ասէ, թէ էր

Հինդ ազգ յառաջ քան զՆիտոկրիս, կին Նաբուպաղասարայ, իբր 800-ին նախ քան զՔր.։ (Գիլմէն, Հնախօս. արևել. Գլ. Գ.)։

Մասբերոյ «Պատմութիւն հին ազգաց արևելից» կոչուած գրքին մէջ, բևեռագիրներ կարդացող գիտնոց, գլխաւորապէս Օբերդի, Ռոլինսոնի, Լընորմանայ, Մենանդի և այլոց գրուածներէն քաղելով կ'առնու Ասորեստանեայց վրայ բոլորովին նոր պատմութիւն մը։

**6.** Բևեռագիր կամ սեպագիր կը կոչուին սեպի կամ բևեռի նման տեսակ մը նշանագրօք քարի և աղիւսոյ վրայ գրուածներ։ Այսպիսի արձանագրութիւնք գտանին մանաւանդ ի կողմանս Նինուէի և Բաբելոնի, Պերսեպոլիս և Վան։ Բևեռագիրք քանի մը տեսակ են. դժուարագոյնը Բաբելական կամ Քաղդէականն է. յետ սորա գայ Ասորեստանի կամ Նինուէինը, հուսկ յետոյ Պարսկականը։ Բաբելացւոց և Ասորեստանեայց սեպագրութիւնն ունի իբր 600, ըստ ոմանց ևս աւելի նշանագիր։ Պարսկականն ունի 33 նշանագիր, որ գրեթէ ամբողջ այբուբենն են այն տեսակին։ Ասի թէ Պուրնուֆ և Լասէն հնչումը գտան պարսկական բևեռագրաց, և թէ Ռոլինսոն անգղիացին կարդաց շատ պարսիկ բևեռագիրներ, որոց երևելին է Պիսիդունի Դարեհեան արձանագրութիւնը։ Օբերդ և այլք, որպէս ասի՝ կարդացին նաև միւս տեսակներն, այն է Բաբելոնին և Ասորեստանինը. և այսպէս ելաւ Ասորեստանի նոր պատմութիւնը, որ հետևեալն է.

**7.** Ասորեստանի հնագոյն իշխանք էին, ըստ բևեռագրաց՝ քուրմ թագաւորք։ Այս թագաւորներէն էին, 1800-էն մինչև 1500 նախ քան զՔր.՝ Իսմի-դայան, Սամսի-բին և Իրի-ամտուք, հարկատուք Եգիպտոսի թագաւորաց, որ զայնու ժամանակաւ իշխէին բոլոր առաջակողման Ասիոյ մինչև Տիգրիս։ 1500-էն ետքը կուգան թագաւորք Ասորեստանի, որոց անուանք և թուականներն են.

1. Ասուր-Նարարա և Նաբու-դագան (1500)
2. Ասուր-բէլ Նիսիսու (1400)
3. Բուսուր-ասուր (1390)
4. Ասուրու-բաղատ (1370)
5. Բէլ-Նիրարի (1350)
6. Պուդիէլ (1330)
7. Բին-Նիրարի Ա. (1310)
8. Սաղման-ասար Ա. (1290)
9. Թուկղաթ-ադար Ա. (1270)
10. Բէլ-կուդուր-ուսսուր (1260)
11. Ադար-աբաղ-ասար (1250)
12. Ասուր-դայան (1190)
13. Մուտակիլ-Նաբու (1150)
14. Ասուր-րիս-իսի (1140)
15. Թուկղաթ-աբաղ-ասար Ա. (1130)
16. Ասուր-բէլ-կաղա (1090)
17. Սամսի-բին Բ. (1070)
18. Ասուր-րապ-ամար (1060)
19. Բէլ-կատ-իրասսու (1060)
20. Սաղման-ասար Բ. (1010)
21. Իրիբ-բին (990—950)
22. Ասուր-իդին—աքէ (950—930)

23. Ասուր-դան-իլ Ա. (930-...)
24. Բին-Նիրարի Բ. (...—889)
25. Թուկղաթ-ադար Բ. (889-882)
26. Ասուր-Նազիր-աբալ (882-857)
27. Սաղման-ասար Գ. (857-822)
28. Սամսի-բին Գ. (822—809)
29. Բին-Նիրարի Գ. (809—780)
30. Ասուր-դան-իլ Բ. (780—752)
31. Ասուր-Նիրարի (752—745)
32. Թուկղաթ-աբալ-ասար Բ. (745—726)
33. Սաղման-ասար Դ. (726—721)
34. Սարեուքին (721—704)
35. Սին-աքէ-իրիբ (704—681)
36. Ասուր-աքէ-իդին 681—667)
37. Ասուր-պան-աբալ (667—6..)
38. Բէլ-զաքիր-իսքուն (......)
39. Ասուր-էդիլ-իլանի (...-625)

**8.** Դնենք համառօտիւ Ասորեստանի պատմութիւնն ըստ բեւեռագրաց։

Բուսուր-ասուր (1390) առաջին անգամ սկսաւ հաղորդութիւն առնել ընդ թագաւորս Բաբելոնի։

Առ Ասուրու-բաղատաւ որդւով Բուսուր ասուրայ (1370) եղև խնամութիւն ի մէջ երկուց թագաւորութեանց Ասորեստանի և Բաբելոնի։ Բուրնաբուրիաս Ա. Բաբելոնի թագաւորն՝ առաւ Ասուրու-բաղատայ դուստրը։ Այսպէս Ասորեստանի թագաւորք սկսան ազդեցութիւն ունել ի վերայ Բաբելոնի, այնպէս որ երբ հարիւր տարի ետքը Ասորեստանի թագաւորն Թուկղաթ-ադար Ա. (1270) կուգայ Բաբելոն, ոչ իբրև բարեկամ, այլ իբրև տիրող, և Բաբելոն այնուհետև կը համարուի իբրև ընդ իշխանութեամբ Ասորեստանի։

Բայց Ասորեստանի թագաւորութեան մեծութիւնը կ՚սկսի առ Ադար-աբալ-ասարաւ (1250)։

Առ Թուկղաթ-աբալ-ասարաւ (1130) արդէն հարկատու էին Ասորեստանի, բաց ի Բաբելոնէ՝ Նաիրի, այսինքն վերին կողմանք Եփրատ և Տիգրիս գետոց, ի հարաւոյ Կորդուաց լերանց և ի հիւսիսոյ Միջագետաց, Ասորւոց երկրին և Գաղեստինու, կամ այժմու Քիւրտիստան, մինչև ի սահմանս Կապադովկիոյ և Կիլիկիոյ։ Թուկղաթ-աբաղայ մէկ արձանագրութիւնը կ՚սկսի այսպէս. «Ես Թուկղաթ-աբալ-ասար, մեծազօր թագաւոր, որ կործանեմ զանզգամս և խորտակեմ զգունդս զօրաց թշնամեաց»։ Թուկղաթ-աբալ-ասար արշաւած կը թուի աւելի դէպ ի հիւսիս մինչև Կովկաս և ապա Ասորւոց վրայ։

Բայց Թուկղաթ-աբալ-ասարայ թոռնորդին Ասուր-բաշ-ամար (1060) կորոյս բոլոր երկիրները, որոց տիրեալ էին նախնիք նորա։

Յետ Ասուր-բաշ-ամարայ թագաւորք Ասորեստանի երբ հարիւր յիսուն տարի մոռցիր էին զօրացնել զտէրութիւն իւրեանց, մինչ թագաւորք Իսրայէլի և Ասորւոց անօգուտ կռիւներով կ՚անցունէին իրենց ժամանակը։

Յառ Թուկղաթ-ատարաւ Բ-իւ (889) կ՚սկսի միւսանգամ Հին աշխարհակալութեան վայրագ ոգին։ Այս թագաւորին համար կը կարդացուի ի բևեռագիրս, թէ «զմարմինս պարտելոց հանէր ի ցից»։ Առ Ասուր-Նազիր-աբաղաւ յաջորդաւ Թուկղաթ-ադարայ (886), նորոգուելով Քաղա, հին քաղաք ի տեղւոջ, ուր Զապ խառնի ի Տիգրիս՝ լինի մայրաքաղաք, և սկսանի Ասորեստանի բուն աշխարհակալութիւնը։ Բոլոր այն երկիրներն, զորս Ասուր-րապ-ամար կորուսած էր՝ նորէն կը նուաճին։ Լինին արշաւանք դէպ ի հիւսիս ի վերայ Մարաց, ի հարաւ և յարևմուտս, նա մանաւանդ մինչև յԵգիպտոս։ Մեմփիս գրաւի գէթ առ ժամանակ մի և մեհեանք կողոպտին ի Թեբէ։

Առ Սաղման-ասարաւ Գ. (857), յաջորդաւ Ասուր-Նազիր-աբաղայ՝ սկսանի պատերազմն ընդ Դամասկոսի առ Բենադադաւ Բ. և առ Ազայելիւ։ Միջին Ասորիք և Կիլիկիա նուաճին։

Սամսի-բին Գ. (822) յաջորդ Սաղման-ասարայ կ՚երթայ մինչև Կասպից կողմերը։

Առ յաջորդօք Սամսի-բինի՝ ժամանակ մը կը թուլնայ Ասորեստանեայց աշխարհակալութեան եռանդը. մինչև որ ապստամբութիւն մը ի Քաղա՝ կը հանէ ի գահ զԹուկղաթ-աբաղ-ասար Բ. (745)։ Մասբերոյ ընդ Թուկղաթ-աբաղ-ասարայ Բ-ի նոյն կը համարի Հրէից Փուղայն և Թակղաթփաղասարը։ Զիարգ և իցէ՝ Թուկղադաբաղ-ասար է արդարև ըստ բևեռագրաց մեծագոյն աշխարհակալ Ասորեստանի։ Գրեթէ ամբողջ Ասիա, յարևելից մինչև Ինդոս, ի հարաւոյ մինչև ի Պարսկային ծոց, յարևմտից մինչև Միջերկրական և Սեաւ ծովերը և ի Փոքրն Ասիա, ի հիւսիսոյ մինչև ի Կուր կամ ի ծովն Կասպից՝ չեղև ազգ կամ երկիր, որ չզգաց Ասորեստանի զինուց զօրութիւնը։ Թուկղաթ-աբաղ-ասարայ յաջորդին Սաղման-ասարայ Դ-ի (726), որ անորդի մեռաւ՝ յաջորդեց Սարեուքին (721), վերակացու պալատան։ Սարեուքին իւր թագաւորութեան առաջին տարին, Եղամայ Կումբանիդաս թագաւորին յաղթելէն ետքը՝ խաղաց ի վերայ Եթովպացւոց թագաւորին Սաբակայ, որ եկած էր յօգնութիւն Պաղեստինացւոց։ Ասորիք, Պաղեստին, Փիւնիկէ և բոլոր Ասիա չկրցան խլրտիլ յահէ Սարեուքինի։ Մասբերոյ զՍարեուքին նոյն կը համարի ընդ Սարկոնի Հրէից (Ես. Ի. 1—3)։ Սարեուքինի որդին և յաջորդը Սին-աքէ-երիպ (Սենեքերիմ) (704), յետ կոտորածին զոր կրեց բանակ նորա յԵգիպտոս ի սրածութենէ՝ իւր ժամանակն անցուց Բաբելոնի և Մարաց կողմերն ապստամբներու դէմ և մեհեաններ ու պալատներ շինելով, զոր երկայն կը նկարագրէ Ռոլինսոն «Հինգ մեծ տէրութիւնք» կոչուած գիրքին մէջ (Հտ.

Բ. էջ 181—183։ Տես և Օբերդ, «Սարկոնեանք» էջ 51)։ Սին-աքէ-րիբէ սպանաւ յերկուց որդւոց իւրոց։ Ադրամելէք, ըստ Սմիթայ, փորձեց թագաւորել, բայց մերժուեցաւ, և տիրեց միւս որդին Ասուր-աքէ-իտին (681) օգնութեամբ Արմէն զօրաց, որոց կը հրամայէր։ Ասուր-աքէ-իտին ընդարձակեց Ասորեստանի տէրութիւնը մինչև Սեաւ ծովուն հիւսիսային արևելեան եզերքը, մինչև Կովկաս և մինչև Արաբիա, և այնպէս դիւրին եղաւ նմա տիրել Եգիպտոսի (672) առ Թարակաւ։ Ասուր-աքէ-իտինի որդին և յաջորդն Ասուր-բան-աբաղ (667) ոչ միայն պահեց իւր հօրմէն նուաճեալ երկիրներն, այլ և Լիւդացւոց թագաւորը Գիւգէս հպատակեցնելով տիրած եղաւ գրեթէ բովանդակ Փոքուն Ասիոյ։ Այսպէս Ասորեստանի թագաւորութիւնը կը հասնէր, գէթ անուամբ՝ մինչև Եգէական ծով (Սմիթ, Պատմ. Ասուրբանիբաղայ, էջ 84—99), մինչ հիւսիսէն և հարաւէն բրդաւ մրրիկն տապալիչ այն հսկայ շինուածին, որ նոյն իսկ հսկայութեան պատճառաւ խարխուլ և անհաստատ էր։

Գ. Բայց թէ ինչ հաւատք կրնայ ընծայուիլ գիտնականապէս բևեռագիրներէն հանուած պատմութեան՝ առ այս չունիմք այլ ապացոյց բաց ի համբաւոյ արանց, որ այն արձանագրութեանց ընթերցուածը կու տան մեզ։ Թերևս աւելի վստահութիւն կրնայինք ընծայել այն ընթերցուածոց՝ եթէ քան զմեզ գիտնագոյնք չէին ցուցեալ միևնոյն երկբայութիւնը զոր մեք։ Րընան ի գիրսն, որ կոչի «Պատմութիւն սեմական լեզուաց», առարկելով այն կարծեաց դէմ, որ արձանագրութեանց լեզուն սեմական կը համարի՝ ասէ. «Ընթերցողք բևեռագրաց ենթադրեն, թէ այն արձանագրութեանց լեզուն, մանաւանդ միոյ տեսակին՝ սեմական է, եւ կը կարծեն գըտանել ի նոսա ձևեր և բառեր, որ բնաւ տեսնուած չեն լեզուաց այն ցեղին մէջ։ Շամբոլիոն առ ի կարող լինելոյ մեկնել եգիպտական մեհենագիրները՝ կ'ստեղծէր բառեր, որոց հետք անգամ չկան ի ղպտերէնի, և այսու արար անընդունելի զկերպն՝ որով կը կարդար մեհենագիրները. մինչ Պուրնուֆ չհնարեց երբէք քերականական ձև մը, զորոյ ճիշտ նմանութիւնը չէր տեսներ ի համացեղ լեզուս այնր լեզուին, զոր կը կարդար։ Օբերդ կ'ենթադրէ, թէ արձանագրութեանց երկրորդ տեսակին լեզուն մօտ է էհքիլերէնի, մահրիերէնի, միով բանիւ լեզուաց այն ճիւղին, զոր քուշեան կոչել սովորել են գիտունք։ Եթէ արձանագրութեանց լեզուն այսպիսի է՝ չկարէ բնաւ սեմական լինել . . . ։ Ո՞չ ապաքէն ներելի է մեզ կասկածել, երբ կը տեսնենք Ասորեստանի ուսման հմտագոյն անձ մը, որպիսի է Րօլինսոն, որ իւր ընթերցուածներն արդարացնելու համար՝ կը պնդէ, թէ Ասորեստանցւոց յատուկ անուանք որոշ բառեր չեն, այլ

այլեւայլ հոմանուն բառերէն մերթ մին և մերթ միւսը կը գործածուի միեւնոյն յատուկ անունը ցուցնելու. զորօրինակ Թագաւորի մը անուան համար գործածուած են բոլոր հոմանուանք, որ գրեթէ միեւնոյն գաղափարը կու տան. թէ միեւնոյն սատուծոյ համար այլեւայլ նշաններ կը գործածուին ըստ հաճոյս. թէ միեւնոյն նշանագիրն այլեւայլ կերպով կը կարդացուի և կրնայ առնուիլ թէ իբրև գաղափարի և թէ իբրև ձայնի նշան, թէ իբրև գիր և թէ իբրև վանկ, ըստ յարմարութեան իմաստին, և կը խոստովանի, թէ այսպէս գիրերուն և նշաններուն այս կամ այն նշանակութիւնը տալով հանած է շատ բան, և շատ անգամ գիրերուն և նշաններուն տուած է այն ձեւը, զոր յարմարագոյն տեսած է այս ինչ իմաստ հանելու: Այսպիսի տկար ենթադրութիւններով սահղծած է Ասորեստանի ժամանակագրութիւն և դիցաբանութիւն մը: Իսկ մարական կոչուած արձանագրութեանց համար սաէ, թէ գրեալ են այնպիսի լեզուով, որոյ հոլովումն գուրանեան կամ թուրքերէն է, շարադրութեան կարգը՝ հնտեւրոպական, դերանուանք՝ սեմական, խոնարհումը՝ թաթարերէն կամ կեղտերէն, բառերը՝ թուքերէն հանդերձ պարսկերէնիւ և սեմական արմատներով: Ճշմարիտ բանասէր մը չի կրնար հաւատալ, թէ գրասեղանին վրայ քանի մը բառարան ունենալով կարէ մարդ լուծել մեծաւ մասամբ անծանօթ գիրերով գրուած անծանօթ լեզուի մը եթէ ոչ բոլորովին անլուծանելի՝ գոնէ շատ փափուկ խնդիրը: Թէեւ ստուգիւ գիտնանք, թէ ինչ է արձանագրութեանց լեզուն՝ հարկ է տակաւին լինել քաջ հմուտ բոլոր դրացի լեզուաց այն լեզուին, զոր պիտի կարդանք, առ ի կարող լինելոյ տալ ճիշտ և քերականական մեկնութիւն այն մուլթ գրուածոց»: «Ուստի, յաւելու Րընան, բեւեռագրաց երկրորդ և երրորդ տեսակին ընթերցուածներն՝ իբրև պատմական ճանչնալով պատմութեանս մէջ առնուլ չեմ համարձակիր: Արդարև եթէ այն ընթերցուածք ժամանակաւ իբրև ճիշդ ապացուցուին՝ իմ գրուածս ուրեք ուրեք թերի պիտի գտնուի, և պիտի մեղադրուիմ, թէ ընդէր հաւատք չընծայեցի այնպիսի աշխատութեանց, որ եթէ արդարև գիտնական յարգ ունին՝ կրնային մեծ լոյս տալ իմ պատմութեանս: Բայց իմ կասկածս այնչափ անպատեհ չի թուիր ինձ, որչափ մուտ տալ պատմութեանս մէջ այնպիսի տեղեկութեանց, որ դեռ արտաքին առնաչաւ դատողութենէ անցած չեն: Եթէ ի միոջէ կողմանէ պարտք են շնորհակալ լինել այն անձանց, որ այսպիսի դժուարին աշխատութեան կուտան զանձինս, խաբուելու և չյաջողելու բեւր վտանգօք՝ այլուստ խոհեմութիւնն պահանջէ դիւր.՝ հաւանութեամբ չգրկել տեղեկութիւններ, յորս հակասութիւններ կը տեսնուին և որ ձեռք

բերուած են անստոյգ միջոցներով. և առանց ապացուցի կը նետուին մեր առջև» (Րընան, Պատ. Սեմ, լեզ. Գիրք. Ա, Գլ. Բ)։ Մենք ոտք մը աւելի յառաջ երթալով քան զՐընան՝ բևեռագրաց ընթերցուածներէն առնումք ինչ ինչ ի պատմութիւնս մեր, թէպէտ ոչ առանց կասկածանաց ընդ վաւերականութիւն նոցա։ Եթէ մեր կասկածը կը ջրի՝ թերութիւն չէ մեզ այն. իսկ եթէ իրաւացի է մեր երկբայութիւնը՝ չեմք գտնուիր ոչ խաբող և ոչ խաբեալ։

**10.** Անտարակոյս քան զՑունացն և զբևեռագրաց՝ ճշմարտագոյն է պատմութիւնն, զոր տան մեզ զԱսորեստանեայց Հրէից մատեանք, ոչ միայն պատմականներն, այլև մարգարէականք։ Մարգարէական գրուածք տեսակ մը քերթուած են վարդապետական, խառն դիւցազնականաւ և քնարականաւ, կ'երգեն անցեալ և ժամանակակից դէպքեր մարգարէական կամ ապառնի ոճով, իբրև Եհովայի նախախնամական կարգադրութիւններ, մերթ ի խրատ և մերթ ի մխիթարութիւն և ի քաջալերութիւն Եհովայի ժողովրդեան։ Բայց զինչ և իցէ բնութիւն մարգարէական գրոց՝ սա ստոյգ է, որ այն մատեանք կը պարունակեն պատմական ակնարկութիւններ և կրնան իբրև ապացոյց ծառայել պատմութեան։

Ըստ Եբրայական բնագրին Ծննդոց (Ժ. 11)՝ Նեբրովթ Քուշեան յետ հիմնելոյ զԲաբելոն՝ եկաւ յԱսուր, այսինքն Ասորեստան, և շինեց զՆինուէ իբր 2500-ին նախ քան զՔր.—«Յերկրէ աստի (ի Բաբելոնէ) ել Նեբրովթ և շինեաց զՆինուէ և զՌոբովթ քաղաք և զՔաղա»։ Բայց թողունք Ծննդոց այս մութ համարը, որ չէ ինչ աւելի քան հարևանցի իմն և աղօտ ակնարկութիւն հին քուշեան հարստութեան մը, մանաւանդ որ Եօթանասնից բնագիրը տարբեր ունի այս թարգմանութիւնը, զԱսուր ոչ իբրև երկիր, այլ իբրև անձ կը համարի հիմնիչ Ասորեստանի տէրութեան և Նինուէի.—«Յերկրէն յայնմանէ ել Ասուր և շինեաց զՆինուէ և զՌաբովթ քաղաք և զՔաղա»։

Իբրև արդարև պատմական և ժամանակակից կամ շատ մօտ ժամանակաւ՝ կարևոր և յարգի են յիշատակութիւնք զԱսորեստանեայց որ ի Չորրորդ գիրս Թագաւորաց։ Այս գիրքէն կը տեսնուի, որ ի վախճանի Թ. դարուն, այն է 800-ին նախ քան զՔր., կար Ասորեստանի թագաւորութիւն մը, մեծ և հզօրագոյն քան զամենայն ծանօթ թագաւորութիւնս այնր ժամանակի։ Արդարև Ը. դարուն սկիզբն էր, որ Իսրայելի Մանայէմ թագաւորն (770—761) օգնութեան կանչեց Ասորեստանի թագաւորը Փուա, կամ ըստ Եբրայական բնագրին՝ Փուղա.—«Եւ ել Փուա արքայ Ասորեստանեայց ի վերայ երկրին, և Մանայէմ ետ Փուայ հազար տաղանդս արծաթոյ՝

յինել ձեռին նորա ընդ նմա, հաստատել զթագաւորութիւնն ի ձեռին նորա։ . . . Եւ դարձաւ արքայն Ասորեստանեայց և ոչ եկաց յերկրին» (Դ. Թագ. ԺԵ. 19)։ Առ Փակէէիւ (740—738) Փուղայի յաջորդը Թագղաթփաղասար եկաւ Իսրայելի վերայ և շատ քաղաքներ առնելով՝ տասն ցեղերուն մէկ մասը գերի տարաւ Ասորեստան.—«Յաւուրս Փակէէի արքայի Իսրայելի եկն Թագղաթփաղասար արքայ Ասորեստանեայց, և առ զԻովն և զԱբելբեթմաաքա և զՅանովէ և զԿադէս և զՀասովր և զԳաղաադ և զԳալիլեա և զամենայն երկիրն Նեփթաղիմայ, և խաղացոյց զնոսա յԱսորեստան» (Դ. Թագ. ԺԵ. 29)։ Յուդայի թագաւորն Աքազ (742—726) Իսրայելի թագաւորին Փակէէի և Դամասկոսի թագաւորին Ռասինի դէմ օգնութեան կանչեց զԹագղաթփաղասար, որ առաւ Դամասկոս և բնակիչները գերի տարաւ.—«Եւ առաքեաց Աքազ հրեշտակս առ Թագղաթփաղասար արքայ Ասորեստանեայց և ասէ. Ծառայ քո և որդի քո եմ ես. ե՛լ և փրկեա զիս ի ձեռաց արքային Ասորւոց և ի ձեռաց արքային Իսրայելի յարուցելոց ի վերայ իմ։ Եւ առ Աքազ զարծաթ և զոսկի զգտեալս ի գանձ տան Տեառն և տան թագաւորին, և առաքեաց արքային Ասորեստանեայց պատարագս։ Եւ լուաւ նմա արքայն Ասորեստանեայց, և ել ի Դամասկոս և առ զնա, և վարեաց զբնակիչս նորա ի գերութիւն ի Կիր, և զՌասին սպան։ Եւ չոգաւ արքայ Աքազ ընդ առաջ Թագղաթփաղասարայ ի Դամասկոս» (Դ. Թագ. ԺԶ. 7-10)։ Յաջորդ Թագղաթփաղասարայ Սաղմանասար խաղաց Իսրայելի թագաւորին Ովսէէի վրայ (736—721), և առնելով զՍամարիա, Իսրայելի մայրաքաղաքը՝ ջնջեց Իսրայելի թագաւորութիւնը և գերի տարաւ տասն ցեղերը.—«Յամի երկոտասաներորդի Աքազու արքայի Յուդայ թագաւորեաց Ովսէէ։ . . . Ի վերայ նորա ել Սաղմանասար արքայ Ասորեստանեայց, և եղև նորա Ովսէէ ծառայ։ . . . Եւ ել արքայ Ասորեստանեայց . . . ի Սամարիա . . . և յամին իններորդի Ովսեայ առ արքայն Ասորեստանեայց զՍամարիա և խաղացոյց զԻսրայել յԱսորեստանեայս և բնակեցոյց զնոսա ի Քաղա և Քաբովր, զգետովն Գովզանայ, ի քաղաքս Մարաց» (Դ. Թագ. ԺԷ. 1-3. 5,6)։ Յետ Սաղմանասարայ Սենեքերիմ եկաւ Յուդայի Եզեկիա թագաւորին վրայ (726—697) երկիցս, և երկրորդ անգամուն զօրքը ջարդուեցաւ հիւանդութենէ, և Սենեքերիմ ետ դարձաւ.—«Եւ յամի չորեքտասաներորդի արքայի Եզեկիայ՝ ել Սենեքերիմ արքայ Ասորեստանեայց ի վերայ ամուր ամուր քաղաքացն Յուդայ, և առ զնոսա։ . . . Եւ եղև զի ի գիշերին յայնմիկ հրեշտակ Տեառն եհար ի բանակէ անտի Ասորեստանւոյն արս հարիւր ութսուն և հինգ հազար . . . . և խաղաց գնաց Սենեքերիմ արքայ Ասորեստանի, և դարձեալ նըս-

տու ի Նինուէ (Դ. Թագ. ԺԸ. 13, ԺԹ. 35, 36)։ Եսայի (Գլ. Ի.) կը յիշէ Ասորեստանի ուրիշ թագաւոր մը Սարգոն, ըստ հայերէն թարգմանութեան՝ Առան անուն, զորոյ մեծամեծ յաղթութիւններ կ'ակնարկէ յԵգիպտոս և ի Փիւնիկէ։ Կը թողունք յիշել Յուդթայ գիրքին Նաբուգոդոնոսորը, քանզի այս գիրքը ոչ միայն արժանահաւատ չէ նիւթոյն կողմանէ, այլ և շատ ետք է ժամանակաւ, այսինքն ոչ յառաջ քան զառաջին դար յետ քրիստոնէութեան։

**11.** Ասորեստանի թագաւորութիւնը կործանեցաւ 625-ին ի ձեռն Կիաքսարայ Ա-ոյ թագաւորին Մարաց, ընդ որում նիզակակից էին Բաբելացիք։ Հրէից պատմութիւնն յայտնապէս չի յիշեր Ասորեստանի թագաւորութեան կործանումը, կ'ենթադրէ սակայն քաղաքական մեծ փոփոխութիւն մը յարևելս զայնու ժամանակաւ։ Ասորեստանի տէրութեան կործանման ակնարկութիւն մը ի գիրս Հրէից՝ կրօնական այն մեծ փոփոխութիւնն է, որ եղև առ Յովսեաւ, թոռամբ Մանասէի։ Գիտենք թէ առ Եզեկիաւ զօրացած էր յԵրուսաղէմ ազգային կամ Եհովայեան կուսակցութիւնը, որ հակառակ էր Ասորեստանի և մէտ յԵգիպտացիս։ Եզեկիա դիպուածով ազատեցաւ Սենեքերիմայ բարկութենէն։ Առ Մանասէիւ զօրացաւ հեթանոս կուսակցութիւնն, որ միտեալ էր յԱսորեստանեայս։ Մուծան կամ վերստին հաստատուեցան սեմական ազգաց կռապաշտ սովորութիւնները, զորս վերցուցած էր Եզեկիա։ Բահաղ և Աստարտ սկսան պաշտուիլ, բագիններ կանգնեցան երկնից զօրութիւններուն՝ նոյն իսկ տաճարին մէջ։ Մանասէ նորոգեց նաև Ամմոնացւոց աստուծոյն Մեղքոմայ պաշտօնը՝ կրակէ անցունելով զորդին, որպէս արարեալ էր հաւ նորա Աքազ։ «Հմայէր—ասէ Գիրք վասն Մանասէի—և հաւահարց լինէր, և արար վհուկս և գէտս»։ Այնչափ աստուածներ կային, ասէ Երեմիա, որչափ քաղաքք. «Ըստ թուոյ քաղաքացն քոց էին քեզ աստուածքն քո, Յուդա» (Երեմ. Բ. 28)։ Մանասէ նաև շատ անմեղ արիւն թափեց. «Նաև արիւն անպարտ եհեղ Մանասէ բազում յոյժ, մինչև ելից զԵրուսաղէմ ծայր ի ծայր» (Դ. Թագ. ԻԱ. 16)։ Ըստ աւանդութեան Հրէից՝ այս հալածանաց ժամանակ սպանուեցաւ նաև Եսայի, Եհովայեանց գլուխը։ Ժողովրդեան եթէ ոչ բոլորին՝ գէթ մեծագոյն մասին հաճոյ թուեցաւ Մանասէի այս քաղաքականութիւնը, որ թուի լեալ մի միայն միջոց հաշտ առնելոյ ընդ նոսա զԱսորեստանեայս։ Արդարև այնպիսի թագաւորէ մը, ասէ Մասբերոյ, վախ չկար Ասորեստանի համար, և Մանասէ ցորչափ կենդանի էր՝ մնաց հաւատարիմ Ասորեստանեայց, ուստի և թոյլ տրուեցաւ նմա խաղաղութեամբ մեռնիլ իւր աթոռին վրայ, ինչպէս յայտնի կը տեսնուի Թագաւորաց գիրքէն։ Ըստ գրոց Մնացորդաց

Մանասէ գերի տարուեցաւ Բաբելոն և զղջալով դարձաւ աթոռը— «Եւ ած Տէր ի վերայ նորա զիշխանս զօրուն արքային Ասորեստանեայց. կալան զնա և կապեցին կապանօք և տարան ի Բաբելոն։ Եւ իբրև վտանգեցաւ՝ խնդրեաց զերեսս տեառն Աստուծոյ իւրոյ, և խոնարհեցաւ յոյժ յերեսաց Աստուծոյ հարցն իւրոց, և դարձոյց զնա Տէր յԵրուսաղէմ ի թագաւորութիւնն իւր» (Բ. Մնաց. ԼԳ. 11—13)։ Բայց Մնացորդաց գիրքը յետին ժամանակի գործ է և ոչ արժանահաւատ։ Մնացորդաց հեղինակը տեսնելով, որ Մանասէ, ամբարշտագոյնն ի թագաւորս Յուդայ, կ'ապրի երկար քան զայլ թագաւորս Յուդայ, առանց ամենևին նեղուելու թշնամիներէ, մինչ բարեպաշտ թագաւորք, Եզեկիա, Յովսիա և այլք թագաւորեցին զկէս ժամանակի միայն թագաւորութեան նորա, և այն՝ մեծ նեղութիւններով՝ ըստ սովորութեան իւրում կ'այլայլէ պատմութիւնը։ Յաւելուած մը մուծանելով՝ գերի տանել կու տայ զՄանասէ զօրապետաց Ասորեստանի թագաւորի մը, զորոյ անունը չի տար, և ապա ապաշխարել տալով դարձունել կու տայ իւր աթոռը։ Մանասէ մեռաւ 640-ին նախ քան զՔր.։ Մանասէի զնացից հետևեցաւ որդին Ամոն որ թագաւորեց երկտասան ամ։ 628-ին նստաւ Յուդայի գահը Յովսիա, և իսկ և իսկ փոխուեցաւ քաղաքականութիւնը։ Եհովայեանք, կուսակիցք ազգային կրօնից՝ միւսանգամ զօրացան, և հաստատուեցաւ ըստ ամենայնի ազգային աստուծոյն Եհովայի պաշտօնը։ Առ Յովսեաւ չի յիշուիր Ասորեստանի անունը, և Յովսիա կը թագաւորէ հանգարտ, մինչ յանկարծ Փարաւոն Նեքաւով, Եգիպտոսի թագաւորը, կ'ելլէ Ասորեստանի երկիրներուն վրայ մինչև Եփրատ։ Յովսիա կ'երթայ դիմաւորել զՆեքաւով, և կ'սպանուի, անտարակոյս ի պատճառս հպատակութեանն, զոր ցուցեալ էին նախորդք նորա Մանասէ և Ամոն՝ Ասորեստանի թագաւորաց, ոխերիմ թշնամեաց Եգիպտոսի։ Յովսիայի քաղաքականութեան փոփոխութիւնը, ինչպէս նաև նուաճեալ Եգիպտացւոց համարձակութիւն առնելով յարձակիլն Ասորեստանի երկիրներուն վրայ՝ կը ցուցնեն թէ այս վերջիններուն զօրութիւնը բեկեալ էր։ Եւ արդարև ճիշդ այն տարին որ Յովսիա թագաւորեց՝ Մարք և Բաբելացիք ելած էին Նինուէի վրայ, որ, որպէս ասացաք՝ 625-ին առնուեցաւ, և բարձաւ Ասորեստանի թագաւորութիւնը։ Բայց Եգիպտոս չյաջողեցաւ ձեռք բերել իւր առաջին իշխանութիւնն Ասիոյ վրայ, քանզի Բաբելացիք առին սեմական միապետութիւնը։ Ուստի անմիջապէս յետ մահուան Յովսեայ յանկարծ կ'երևան Բաբելացիք.—«Յաւուրս նորա (Յովակիմայ, յաջորդին Յովսեայ) ել Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց, և եղև նորա ծառայ Յովակիմ»։ «Եւ ոչ ևս յաւել—

կը յարէ պատմութիւնը — արքայն Եգիպտացւոց ելանել յերկրէն իւրմէ, քանզի առ արքայն Բաբելոնի ի հեղեղատէն Եգիպտացւոց մինչև ցգետըն Եփրատ զամենայն ինչ, որ էր արքային Եգիպտացւոց» (Դ. Թագ. ԻԴ. 1, 7), Այսպէս, թէպէտ յայտնապէս չի յիշուիր Հրէից գրոց մէջ Ասորեստանի կործանումը՝ սակայն բոլոր այս պարագաները կը ցուցնեն այս նշանաւոր դէպքը, որոյ բնական հետեւանքն էին վերոյիշեալ փոփոխութիւնները։ Ուստի կարեմք ասել, թէ Հրէից ժամանակակից պատմութիւնը կը հաստատէ այն աւանդութիւնը, թէ նախ քան զՔր. 600-էն իբր 25 կամ 30 տարի առաջ վերցաւ Ասորեստանի ինքնակալութիւնը և անցաւ Բաբելացւոց։

**12.** Այսպէս ի Չորրորդ գրոց Թագաւորաց, որ գրեթէ ժամանակակից է՝ ծանօթ են մեզ Ասորեստանի թագաւորաց անունները և գործերն յԱսորիս և ի Պաղեստին, 769-էն մինչև ի սպառ անհետանալ նոցա ի պատմութենէ։ Հրէից գրոց այս վկայութիւնը կրնանք առանց երկբայութեան իբրև պատմական ընդունել, քանզի ոչ միայն ոճիւրն, այն է Չորրորդ գիրք Թագաւորաց, պատմուած դիպաց ժամանակաւ շատ մօտ է, այսինքն խմբագրեալ առ գերութեամբ՝ այլ և ազգին նախընթաց և յետագայ պատմութիւնն այնպէս կապուած զերկընդխառն է ընդ պատմութեան Ասորեստանեայց՝ որ ամենևին տեղի չի թողուր երկբայութեան։

**13.** Եսայեայ անուամբ ծանօթ մարգարէութեան առաջին երեսուն և հինգ գլուխներէն, որ մեծաւ մասամբ Եսայեայ են, ուստի և Ը. դարուն առաջին կիսուն գործ՝ կը տեսնուի, թէ բաց յԱսորւոց երկրէն և ի Պաղեստինէ՝ Ասորեստանի թագաւորք տիրած էին ուրիշ շատ երկիրներու։ Եսայի Ժ. գլխոյն մէջ ըստ Եբրայական բնագրին՝ Ասորեստանի թագաւորը կ'անուանէ գաւազան բարկութեան Եհովայի, զոր այսպէս խօսել կուտայ. «Ձոյլն որ ի ձեռին նորա՝ սրտմտութիւն իմ է. առաքեցի զնա յազգ նենգաւոր, և ետու նմա իշխանութիւն ի վերայ ժողովրդոց, ընդ որս ցասուցեալ է իմ, ժողովել զաւար և յափշտակել, և առնել զնոսա կոխան իբրև զկաւ զաւեհաց։ Եւ նա... ես ի մտի իւրում սատակել ջնջել զազգս ոչ սակաւս... և ասէ. Զօրութեամբ բազկի իմոյ և իմաստութեամբ իմով արարի, քանզի իմ է հանճար, և բարձի զսահմանս ազգաց, և առի յաւար զմեծութիւնս նոցա, և իբրև հզօր նուաճեցի զբնակիչս նոցա և եգիտ ձեռն իմ զստացուածս ժողովրդոց իբրև զբոյն, և ժողովեցի զամենայն երկիր, որպէս որ ժողովիցէ զձուս թողեալս, և ոչ էր որ շարժէր զթև իւր կամ բանայր զբերան իւր և ճիչ հանէր»։ Ասորեստանի մեծութիւնը կը նկարագրէ նաև Եզեկիէլ ժամանակակից և ականատես՝ այլաբանօրէն, Լիբանանու նոճւոյ նմանութեամբ

իւր բառազարդ ոճով.—«Ասուր իբրև նոճ մի ի Լիբանան, գեղեցիկ շառաւիղօք և խիտ ոստովք և բարձր մեծութեամբ։ Ի մէջ ամպոց եղև գլուխ նորա, և ջուր սնոյց զնա, և անդունդք բարձրացուցին զնա. և զգետս իւր ած շուրջ զտնկովք իւրովք, և զանտառախիտս իւր արձակեաց ընդ ամենայն փայտս դաշտին։ Վասն այնորիկ բարձրացաւ մեծութիւն նորա քան զամենայն ծառոց դաշտին, և տարածեցան ոստք նորա, և բարձրացան շառաւիղք նորա ի ջուրց բազմաց։ Ի տարածանել իւրում՝ ի շառաւիղս նորա բնակեցին ամենայն թռչունք երկնից, և ի ներքոյ ոստոց նորա ծնան ամենայն գազանք դաշտի, և ընդ հովանեաւ նորա բնակեցին ամենայն բազմութիւնք ազգաց, և եղև գեղեցիկ բարձրութեամբ իւրով, վասն երկայնութեան ոստոց իւրոց, զի եղեն արմատք նորա ի ջուրս բազումս։ Սարդն և սարոյն և նոճ ի դրախտին Աստուծոյ ոչ հաւասարեցին շառաւիղաց նորա, մայրքն և սօսոյք ոչ նմանեցին ոստոց նորա. ամենայն փայտ ի դրախտին Աստուծոյ ոչ նմանեցին նմա գեղեցկութեամբ վասն անտառախիտ ոստոց նորա, և նախանձեցան նմա ամենայն ծառք դրախտին փափկութեան Աստուծոյ» (Եզեկ. ԼԱ. 3—9)։ Եսայի Է. և Ը. գլուխներուն մէջ կը ցուցնէ, թէ յառաջ քան զնուաճումն Իսրայելի և Ասորւոց՝ Ասորեստանի թագաւորք տիրած էին Միջագետաց մինչև Եփրատ, զոր գետ կոչել սովոր են Եբրայեցւոց գիրք.—«Ածցէ Տէր ի վերայ քո (Իսրայելի թագաւորին) և ի վերայ ժողովրդեան քո և ի վերայ տան հօր քո աւուրս, որ ոչ եկին յօրէ յորմէ զատաւ Եփրեմ ի Յուդայէ, այսինքն զարքայն Ասորեստանեայց։ ...Յաւուր յայնմիկ գերծցէ Տէր ածելեաւ վարձելով, այսինքն ի ձեռն արքային Ասորեստանեայց որ յայնկոյս գետոյն՝ զգլուխ և զմազ ոտից, զմօրուս ևս վերացէ»։ «Փոխանակ զի արհամարհեաց ժողովուրդս այս զջուրն Սելովայ որ գնայ խաղաղ, և հաճեցաւ ընդ Ռասին և ընդ որդին Ռոմելայ՝ վասն այսորիկ ահա հանցէ Տէր ի վերայ նոցա զջուր գետոյն, զհզօրն և զյորդ, զարքայն Ասորեստանեայց և զամենայն զօրութիւն նորա»։ ԺԱ. գլխոյն մէջ կը յիշուի Եգիպտոս ընդ իշխանութեամբ Ասորեստանի.—«Յաւուր յայնմիկ եղիցի ճանապարհ Եգիպտացւոցն առ Ասորեստանեայս, և մտցեն Ասորեստանեայքն յԵգիպտոս, և Եգիպտացիքն երթիցեն առ Ասորեստանեայս, և ծառայեսցեն Եգիպտացիքն Ասորեստանեայցն»։ Ի. և ԻԳ. գլուխներուն մէջ կը յիշուի Եթովպացւոց նուաճումը.—«Եւ տարցի արքայն Ասորեստանեայց զԵթովպացիսն յաքսոր, զերիտասարդս և զծերս նոցա մերկս և բոկս, խայտառակեալ զամօթ նոցա ի նախատինս Եգիպտացւոց։ Եւ ստկումն ունիցի զնոսա (զՓղշտացիս) և ամաչեսցեն վասն Եթովպացւոցն որ ապաւէն էին նոցա, և վասն Եգիպտացւոցն որ էին

փառք նոցա։ Եւ ասասցեն յաւուր յայնմիկ բնակիչք երկրիս այսո-
րիկ որ առ ծովեզերբն (Փղշտացիք). Ահա այսպէս եղև ապաւէն
մեր, առ որ փախուցեալ էաք ապրեցուցանել զանձինս մեր յերեսաց
արքային Ասորեստանեայց և գտանել օգնութիւն ի նոցանէ. արդ
մեք զիա՞րդ ապրեսցուք» (Ես. Ի. 4—6)։ ԻԶ. գլուխը կը նկարագրէ
Փիւնիկեցւոց նուաճումը, և զԲաբելոն կը ցուցնէ ընդ իշխանու-
թեամբ Ասորեստանի. «Ամօթ լեր, Սիդոն, ասէ ծով։... Յորժամ
լուր լիցի յերկրին Եգիպտացւոց՝ ցաւք կալցին զնա վասն Տիւրոսի...
վարեսցի նա յոտից իւրոց ի պանդխտութիւն հեռաւոր։ Տէր զօ-
րութեանց հրամայեաց վասն Քանանու՝ կորուսանել զզօրութիւն նո-
րա։ Յոտն կաց և անց ընդ ծով, և թէպէտ դիմեսցես ի Կիտիիս՝
և ոչ անդ լիցի քեզ հանգիստ. և եթէ յերկիրն Քաղդէացւոց՝ սակայն և
այն աւերեալ է յԱսորեստանեայց և անդ դուլ և դադար քեզ ոչ
գտանիցէ»։ Իսրայելի գերիներուն համար կը պատմուի, թէ Թագ-
ղաթփաղասար և ապա Սաղմանասար տարին զնոսա Մարաց և Կաս-
պից կողմերը, զորս պատմութիւնն Ասորեստան կ'անուանէ, ուստի
յայտնի է, թէ Ասորեստանցւոց կը վերաբերէին այն երկիրները.—
«Եւ խաղացոյց (Թագղաթփաղասար) զԻսրայէլ յԱսորեստանեայս, և
բնակեցոյց զնոսա ի Քաղա և ի Քաբովր և առ գետովն Գովզանայ
ի քաղաքս Մարաց (Դ. Թագ. ԺԷ. 6)։ Նոյնը կը պատմուի նաև այն
գերեաց համար, զորս յետոյ Սաղմանասար տարաւ Ասորեստան։
Գովզան Մարաց երկրին մէջ գետ է, որ կը թափի Կասպից ծովը։
Նոյնպէս յետ գերութեան Իսրայելի ի Սաղմանասարայ՝ Պաղեստին
ղրկուած գաղթական ազգաց անուններէն կը տեսնուի, թէ բուն Ա-
սորեստանէ դուրս շատ երկիրներ էին ընդ իշխանութեամբ Ասո-
րեստանի թագաւորաց.—«Եւ ած արքայն Ասորեստանեայց ի Բաբե-
լոնէ և ի Քութայ և յԱւայ և յԵմաթայ և ի Սեփարուիմայ, և բը-
նակեցոյց զնոսա ի քաղաքս Սամարեայ փոխանակ որդւոցն Իսրայե-
լի....։ Եւ արք Բաբելոնի արարին զՍոքքովթ-Բանովթ, և արք Քու-
թայ արարին զՆերգաղ (Հայերէն թարգմանութիւնն ունի Անգեղ),
և արք Եմաթայ արարին զԱսիմաթ, և Աւացիք արարին զՆեբաս
և զԹարթակ, և Սեփարուիմացիքն այրէին զորդիս իւրեանց ի հուր
Ադրամելեքայ և Անամելեքայ աստուածոց Սեփարուիմայ» (Դ. Թագ.
ԺԷ. 24, 30, 31)։ Բաբելոն ծանօթ է. իսկ Քութ, Աւա, Եմաթ և
Սեփարուիմ երկիրներ էին հեռի յԱսորեստանէ, ի հիւսիսակողման
Միջագետաց, Ասորւոց երկրին և Փիւնիկէի, մինչև Իսոսի կամ Հայ-
ոց ծոցը, կամ աւելի բացայայտ՝ Կիլիկիոյ և Կապադովկիոյ սահմաննե-
րը։ Նշանաւոր է նաև Սենեքերիմայ պատգամաւորին Ռափսակայ
խօսքն առ Եզեկիա. «Ահա դու քեզէն իսկ լուար զամենայն ինչ

զոր արարին թագաւորք Ասորեստանեայց ընդ ամենայն աշխարհս սատակել զնոսա, և դու փրկիցես։ Միթէ փրկեցին զնոսա աստուածք ազգաց, զորս ապականեցին հարք իմ, զԳովզան և զԽառան և զՌափաթ և զորդիսն Եդեմայ առ Ծովեզերըն։ Ո՞ւր է արքայն Եմաթայ և արքայն Արփաթայ, և արքայն քաղաքին Սեփարուիմայ, Անայ և Աւայ» (Դ. Թագ. ԻԹ. 11—13)։ Յայտնի է ուրեմն, թէ առ նախորդօք Սենեքերիմայ, թերևս յառաջ իսկ քան զԸ. դար նախ քան զՔր.՝ նուաճեալ էին շատ երկիրներ յարևելից, ի հիւսիսոյ, ի հարաւոյ և յարևմտից Հրէաստանի։ Նոյն ինքն Եզեկիա կը վկայէ, թէ Ասորեստանի թագաւորք տիրած էին շատ երկիրներու.—«Արդարև, տէր, աւերեցին թագաւորք Ասորեստանեայց զազգս և զերկիր նոցա, և ետուն զաստուածս նոցա հրոյ» (Դ. Թագ. ԺԹ. 17)։ Հարժան կը համարինք յիշել հին յունական աւանդութիւն մը, որ զԱսորեստանեայս առ Տրովական պատերազմաւ, այն է 1200-էն ն. ք. զՔր.՝ տէր կը դնէ մեծի մասին Փոքուն Ասիոյ, քանզի ըստ Հոմերոսի Տևտամոս արքայ Ասորեստանեայց, երբև գրացի Տրովացւոց՝ զՄեմնոն բիւր մը զօրօք կը ղրկէ յօգնութիւն Պրիամու. աւանդութիւն մը որ չկարէ յետոյ լինել քան զԶ. դար նախ քան զՔր., այսինքն քան զՊիսիստրատոս, առ որով խմբագրեցաւ Հոմերոս։

**14**. Արմենիա մանաւանդ, իբրև սահմանակից Ասորեստանի ի հարաւոյ արևելից՝ չկարէր մնալ ազատ յազդեցութենէ զինուց թագաւորաց Ասորեստանի, բայց ստոյգ պատմական վկայութիւն չունինք առ այս։ Բաց յԵգիպտացւոց և ի Մարաց՝ միւս ազգերը զորս վերագոյն յիշեցաք Հրէից գիրքերէն իբրև հպատակ Ասորեստանի՝ կը վերաբերէին սեմական կամ արամէական ցեղին, այնպէս որ մարթ է ասել, թէ Ասորեստանի թագաւորաց գլխաւորութիւնը և ջանքն էր մանաւանդ բոլոր արամէական ազգերը միացնել և առնել մի հզօր պետութիւն ընդ գաւազանաւ իւրեանց, որպէս և արարին իսկ։ Զիարդ և իցէ՝ յայտնի չէ ի պատմութենէ, թէ Ասորեստանի թագաւորք ջանացին կամ մանաւանդ յաջողեցան անցնիլ անդր քան զգօտին Կորդուաց և նուաճել Արմենիոյ ազգերը։ Երեմիայէ յիշուած թագաւորութիւնք, Արարատ, Մինի, Ասքանազ, որք, մանաւանդ առաջինը, Արմենիոյ թագաւորութիւններ էին՝ կային հարկաւ յառաջ քան զկործանումն Բաբելոնի, այն է իբր 100 ամօք յետոյ քան զկործանումն Ասորեստանեայց, և էին բաւական երևելի, մինչև լինել գործակից Մարաց և Պարսից՝ ի սպառ բարձումն արամէական միապետութեան ի Բաբելացւոց, առ որս անցած էր այն միապետութիւնն յետ կործանման Նինուէի, և առմամբ Բաբելոնի անցաւ արիական կամ հնդեւրոպական ցեղին։

Բայց ոչ միայն յառման Բաբելոնի, այն է 538-էն, այլ և իբր դար ու կէս յառաջ քան զայն թուական, այսինքն 707-էն նախ քան Ք. ա. Սենեքերիմաւ՝ ի գիրս Հրէից կը յիշուի Երեմիայի երեք թագաւորութեանց մին, Արարատ, իբրև ազատ երկիր։ Ըստ Չորրորդ գրոց թագաւորաց (Գլ. ԺԹ. 37), երկու որդիք Սենեքերիմայ յետ սպանանելոյ զհայրն իւրեանց փախան Արարատայ երկիրը.—«Եւ եղև մինչդեռ երկիր պագանէր (Սենեքերիմ) ի տան Նեսրաքայ աստուածոյ իւրում՝ Ադրամելէք և Սարասար որդիք նորա հարին զնա սրով, և ինքեանք զերծան յերկիրն Արարատայ»։ Յայտնի է թէ Արարատ չէր, գէթ յայնժամ, ընդ իշխանութեամբ կամ ընդ ազդեցութեամբ Ասորեստանի, ապա թէ ոչ հայրասպանքն չէին համարձակիր փախչել հոն։ Մանաւանդ որ ըստ Խորենացւոյն՝ յայնժամու Հայոց թագաւորն, որ Սկայորդի կը կոչուէր՝ պատուով ընկալաւ զնոսա, և ի նոցանէ սերեցան երկու երևելի ցեղք Հայոց, Արծրունիք և Գնունիք.—«Յորոց զմին յարևմտից հարաւոյ աշխարհիս մերոյ բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին, այսինքն զՍանասարն… իսկ Արգամոզանն (Ադրամելէք) յարևելից հարաւոյ նորին կողմանն բնակեալ։ Ի սմանէ ասէ պատմագիրն (Մարիբաս) լինել զԱրծրունիս և զԳնունիս» (Խոր. Ա. ԻԳ.)։ Քան զվկայութիւն Խորենացւոյն զօրաւոր է նոյն իսկ Արծրունեաց ազգին աւանդութիւնը, որ դեռ կենդանի էր ի սկզբան Գ. դարուն։ Երբ Յազկերտի որդին Շապուհ ի մականախաղուն զարկաւ մականաւ Շաւասպայ Արծրունւոյ, ասելով, «Ծանիր զքեզ»՝ Շաւասպ պատասխանեց. «Այո, ճանաչեմ և զիս արքայորդի ի սերմանէ Սանասարայ և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո զբարձն արքայի համբուրել» (Խոր. Գ. ԾԵ.)։

**15.** Արդարև Դիոդորոս Սիկեղացի յԱսորեստանեայց պատմութեան, զոր ի Կտեսեայ առած է՝ կը յիշէ Բարզանէս անուն Արմէն թագաւոր մը յաղթուած ի Նինոսէ և նորէն հաստատուած ի թագաւորութեան իւրում (Դիոդ. Սիկ. Բ. Ա.)։ Հաւանական է թէ Ասորեստանի աշխարհակալներէն մին բռնեց կամ ի նեղ արկ Արմենիոյ թագաւոր մը, և խորագէտ Հայը զիջանելով քան զինքն հզօրագունին՝ հաստատուեցաւ ի թագաւորութեան։ Բայց հաւանականութիւնը պատմութիւն չէ, և Դիոդորոսի յիշեալ պատմութիւնը չունի պատմական երաշխաւորութիւն, քանզի ո՛չ Դիոդորոս ժամանակակից է, և ոչ աղբիւրն, ուստի առած է՝ ծանօթ։

Դիտողութեան արժանի է սակայն Բարզանէս անունն, որ Հայոց սովորական Վարզանէս կամ Վարդան անուան յունարէն թարգմանութիւնն է։ Եթէ ապացուցուի այս պատմութիւնը՝ կ'ապացուցուի նաև թէ ազգը որոյ թագաւոր էր Վարդան՝ հնդեւրոպական էր.

քանզի Վարդան՝ հնդեւրոպական բառ է և կը նշանակէ *ուսեալ*, որոյ արմատը վարդ, լծորդ ընդ վարժ բառին՝ կը գտնուի մեր վարդապետ, վարդապետել, վարդապետութիւն բառերուն մէջ։

**16**. Խորենացին անուամբ ի Մարիբասայ, բայց իրօք ի Կտեսեայ առնլով կը յիշէ նոյն պատմութիւնը պարագաներու փոփոխմամբ։ Ըստ Խորենացւոյն Նինոս ոչ թէ կը յաղթէ Հայոց թագաւորին, այլ առ երկիւղի հրաման տայ Նմա վարել զիւր իշխանութիւն, համարձակութիւն տալով ըստ օրինի թագաւորաց Ասորեստանի վարտակալ կապել մարգարտէ, և երկրորդ Նորա կոչիլ.—«Նինոս թագաւորեալ ի Նինուէ . . . խորհէր բառնալ ջնջել զամենայն ճետ սերմանեալ յարանց քաջին Հայկայ. այլ երկիւղ կասկածանաց խորդաւանաց լինելոյ իւրոյ թագաւորութեան զայսպիսի համարեալ իրագործութիւն՝ ծածկէ զչարութիւնն, և հրամայէ Նմա (Արամայ) զայն իշխանութիւն անկասկածաբար ունել, և համարձակութիւն տայ Նմա վարսակալ ածել մարգարտէ և երկրորդ Նորա կոչել» (Խոր. Ա. ԺԴ.)։ Խորենացւոյն աղբիւրը, որպէս զի մեկնէ Արմէն անունը, ինչպէս նաև Մեծ, Փոքր, Առաջին, Երկրորդ. Երրորդ և Չորրորդ Հայք կոչումները՝ հայ թագաւորին Բարզանէս անունը կը փոխէ յԱրամ, տիրել կու տայ Նմա Հայաստանի արևմտեան կողման և յանուն Նորա կոչել կու տայ զՀայս՝ Արմէն։ Բայց ո՛չ Արմէն անունը, և ոչ Մեծ և Փոքր, Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Արմենիա կոչումները կրնան Արամէն գալ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Խորենացին յետ գնելոյ զՀայս առ Արամաւ բարեկամ Ասորեստանեայց՝ յաջորդ տալով Արամայ զԱրա՝ կը թշնամացնէ զՀայս ընդ Ասորեստանեայս առ վաւաշոտն Շամիրամաւ, և ապա առ յաջորդօք Նորա, մինչև ի կործանումն Նինուէի, կը գնէ զՀայս հպատակս կամ հարկատուս Ասորեստանի։ Բայց ոչ այս պատմութեան միայն, այլ և նոյն իսկ մարիբասեան աղբեր վրայ տեսցուք ի ստորև։

**17**. Արդի հնաբանք, որպէս թէ բևեռագիրներէն առնլով բաւական երկայն և բոլորովին նոր պատմութիւն մը կու տան մեզ զԱրմենիոյ առ Ասորեստանեօք։

«Մինչև Սարեւուքին (721—704)—ասէ Մասբերոյ, (Պատմ. Արև. ազգ. Գիրք Դ. Գլ. Բ.)—Ասորեստան մեծացած էր կորստեամբ այնպիսի ցեղից և թագաւորութեանց, որ հզօր տէրութեան մը առջև երկար դիմանալու չէին բաւական։ Այն ցեղք և թագաւորութիւնք վերջապէս բարձան ի միջոյ, բայց կային տէրութիւնք պնդակազմք իբրև զԱսորեստան, որք կարող էին ոչ միայն զդէմ ունել, այլ և հարուած ևս տալ հզօր տէրութեան։ Երբ Սարեւուքին թագաւորեց՝ Ասորեստան ունէր սահմանակից ինքեան երիս այսպիսի տէրութիւնս,

այն է զԵգիպտոս յարևմտից հարաւոյ, զԹագաւորութիւնն Ուրարդւոյ (Արարատայ) ի հիւսիսոյ և զհին Թագաւորութիւնն Եղամայ յարևելից հարաւոյ։ Եգիպտոս, Ուրարդի և Եղամ էին Թումբք ընդդէմ Ասորեստանի և իբրև միջնորմ ի մէջ նորա և մնացեալ աշխարհի։ Արդարև Սարեուքին և յաջորդք նորա իբրև զամս յիսուն տարին յաղթութիւն ի վերայ յաղթութեան այն երեք ազգաց դէմ. առին զքաղաքս նոցա, եդին ի նոսա կուսակալներ, հարկատու իշխաններ, պահակապաններ. դիւրին չէր սակայն Եգիպտոսի պէս երկիր մը ընկճել ի սպառ, ինչպէս ընկճեցին զԱսորիս և զհրէաստան. ուստի և յաջողանք Ասորեստանեայց առ Նեղոսի, Երասխայ և Ուլայի՝ առօրեայ միայն էին, և այն յաջողանաց արագ կը յաջորդէին ձախողանք։ Բանակք նոցա, հզօրագոյնք անգամ, այն ինչ կը կարծէին լինել յակաստանի՝ յանկարծ կը գտնէին զինքեանս վանեալ և վկանդեալ։ Ստէպ յաղթութիւններով մաշեցուցին Թշնամին, բայց մաշեցան միանգամայն ինքեանք։ Մինչ զԵգիպտոս և զԵղամ նուաճեցին՝ կը կարծէին թէ աշխատեցան վասն իւրեանց, բայց շուտով տեսնուեցաւ թէ Պարսից համար աշխատած էին»։

Սարեուքին, ըստ բևեռագրաց, անդէն յառաջնում ամի Թագաւորութեան իւրոյ եւ ախոյեան իւր տէրութեան այն երեք Թըշնամեաց դէմ։ Յետ հարկանելոյ 721-ին Եղամայ Թագաւորը Գումպանիկաս՝ յաջորդ ամին յարձակեցաւ ի վերայ Սաբակայ արքային Եգիպտացւոց, որ յաղթուելով փախաւ ի վերին Եգիպտոս ուր մեռաւ։ Յետ պարտութեանն Եգիպտոսի՝ կարգն Ուրարդւոյ էր։ Զայնու ժամանակաւ, ըստ Մասբերոյի, Արմենիոյ լեռնային երկիրն, ուր կը բխեն Եփրատ և Տիգրիս՝ կը բնակէր Վրաց և ուրիշ Կովկասեան ազգաց հետ համազգի ցեղ մը, տարբեր յայժմու Հայոց։ Արմենիա կը բաժնուէր մանր մանր տէրութեանց, որոց անուանք, ասէ Մասբերոյ, ծանօթ են մեզ, բայց տեղերը միշտ դիւրաւ չենք կրնար որոշել աշխարհացուցին վրայ։ Այն մանր մանր տէրութեանց գլխաւորներն էին,—Նաիրի (Արմենիոյ հարաւային արևմտեան մասը, Աղձնիք, Ծոփք) յակունս Եփրատայ և Տիգրիսի, Մաննա (Վան) յարևելից հարաւոյ, և Մուսասիր (Մուշ) ի հիւսիսոյ Վանայ ծովուն, Միդտիս լերանց (այժմ գաւառ Կարնոյ) և Միլիտի (Մալաթիոյ) իշխանութիւններն հանդերձ Ուրարդւոյ (Արարատայ) Թագաւորութեամբ, որում յաջողած էր բոլոր այն դրացի ցեղերը կամ Թագաւորութիւններն առնել ինքեան դաշնակից։ Մինչև Սարեուքին Ասորեստանի Թագաւորք չկրցան այնպէս ստէպ և ազատ արշաւել յԱրմենիա, ինչպէս կ՚արշաւէին ի Միջագետս, յԱսորիս և ի Պաղեստին, թէ վասն ամրութեան երկրին,—քանզի իբրև ամբարտակ կային

առաջի նոցա լերինք Արմենիոյ դժուարամատոյցք, ուր բաց ի դըժուարութենէ ուրիշ օգուտ պիտի չկրնային քաղել,— և թէ վասն քաջութեան բնակչացն։ Բայց և այնպէս Թուկղաթ-աբաղ-ասար Ա. (1130) յարձակած էր Նաիրիի վրայ, զոր յաջորդք նորա նուաճեցին մեծաւ մասամբ, այնպէս որ յԹ. դարուն նախ քան զՔր. Տիգրիսի վերնագաւառը գրեթէ ամբողջ հարկատու կամ հպատակ էր Ասորեստանցւոց։ Ասուր-Նազիր աբաղ (883—857) սկսաւ Մաննայի դէմ կռուիլ։ Սաղմանասար Գ. գնաց աւելի յառաջ և յարձակեցաւ Ուրարդւոյ վրայ։ Զարկաւ 841-ին զթագաւոր երկրին զԱրամէ, 832-ին՝ զյաջորդ նորա Սասուրի, 830-ին՝ Մաննայի թագաւորին զօրքը, յաջորդ ամին՝ Ուրարդւոյ զօրքը. բայց այսու ամենայնիւ ոչինչ օգտեցաւ, քանզի այն ինչ կը յաղթուէր թշնամին՝ անդէն գլուխ կը վերցնէր նորէն։ Բին-Նիրարի Գ. 813-էն մինչև 810 երկիցս, և Սաղմանասար Գ. 787-էն մինչև 784 չորիցս արշաւեց ի վերայ Մաննայի, և ապա երկիցս, այսինքն 782-ին և 780-ին՝ ի վերայ Ուրարդւոյ։ Ուրարդի չնուաճեցաւ, նա մանաւանդ օգտեցաւ։ Ի հազորդակցութենէ ասոր ընդ Ասորեստանեայս ծաղկեցաւ երկիրը կըրթութեամբ և արուեստիւք. նա փոխ առաւ Ասորեստանցւոց գրելոյ եղանակն անգամ, բևեռագրութիւնը։ Մին ի թագաւորաց երկրին Պէլիտուրիս Ա. որդի Լուտիպրեայ՝ ետ բերել ի Նինուէէ դպիրս, որ իւրեանց (Ասորեստանի) լեզուաւ յօրինեցին պաշտօնական արձանագրութիւններ, Ասորեստանի թագաւորաց փառաւոր տիտղոսները տալով Ուրարդւոյ թագաւորին։ Նինուէի լեզուն եղաւ ժամանակ մի Ուրարդւոյ գիտնոց լեզուն, յետոյ առ Իսպուինաւ Ա-ով, որդւով Պելիտուրիսի՝ Ասորեստանեայց գիրն իւիք իւիք փոփոխութեամբ արկաւ ի կիր բնիկ լեզուաւ գրելու։ Բայց առ Թուկղաթ-աբաղ-ասարաւ Բ-իւ Ասորեստանցիք զօրացան միւսանգամ։ Ուրարդւոյ թագաւորը Սարտա չարաչար յաղթուեցաւ նախ 742-ին, ապա 734-ին, այնպէս որ ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել։

Սարտայի յաջորդը Մինուաս Ա. յիշուելու արժանի գործ մը չունի. բայց Մինուասայ երէց որդին Ուրսա եղեւ ահեղ թշնամի Սարեուքինի։ Ուրսա խորհեցաւ ազատել զինք և զդըրացիս իւր յազդեցութենէ Ասորեստանեայց, և ամէն միջոց գործածեց այս նպատակին հասնելու։ Նախ ջանաց Մաննայի թագաւորն Իրանզու զատել Ասորեստանի հետ դաշնակցութենէն, և երբ Իրանզու չհաճեցաւ՝ Ուրսա Զիգարդուի թագաւորին Միդդայի հետ միաբանելով ապստամբեցոյց այն երկրին (Մաննայի) ժողովուրդն Իրանզուի դէմ։ Սարեուքին փութաց յօգնութիւն դաշնակցին իւրոյ. առաւ յարձակմամբ Մաննայի երկու քաղաքները, Սուանտաքուլ և Տսուրտուքա,

որ յարած էին ի Միդագդի, հրձիգ արար զնոսա, և զընակիչս նոցա տարաւ յԱսորիս (719)։ Մեծամեծ ապստամբութիւններ, որ Սարգոնի տէրութեան մէջ բրթան՝ արգելին զնա յառաջ տանել պատերազմն ընդդէմ Ուրսայի և դաշնաւորաց նորա։ Սարգոնի յետ իբր երկու տարի կռուելոյ յերկրին Սինուքդայի (718) և ընկճելոյ յաղթառոյ զարքայն Քարքեմիսի զՊիսիրիս (717), երբ նորէն եկաւ յԱրմենիա՝ Մաննայի թագաւորն Իրանզու մեռած, որդին Ազա յապստամբութեան ուրեք սպանուած, և յաջորդած էր նմա Ուլլուսուն, իւր բերդաքաղաքներէն քսան և երկու բերդաքաղաք իբրև գրաւ հաւատարմութեան տալով Ուրսայի։ Սարգոնի աճապարեց զարկաւ զՈւլլուսուն և զՄիդադդի և ապականեց երկիրը որ ի մէջ Ուրմիոյ և Վանայ ծովերուն. բռնեց նաև զՊակաադդի, Միլախ լերանց թագաւորը, մորթել տուաւ զնա կենդանւոյն անդ՝ ուր Ազա սպանուած էր։ Ուլլուսուն առ երկիւղի, թէ գուցէ նոյն չարիք ինքեան ևս պատահէին՝ «փութաց իբրև թռչուն», եկաւ և ինկաւ յաղթողին (Սարգոնի) ոտքը։ Սարգոնի ներեց նմա և ետ նմա միւսանգամ զթագաւորութիւն նորա։ Փոքր միւս ևս՝ և ձեռք պիտի իյնար նաև Ուրսա, եթէ Սարգոնի չստիպուէր ապստամբութեան մը պատճառաւ երթալ իւր տէրութեան հարաւային կողմը (716)։ Յաջորդ ամին (715) Ուլլուսունի ապստամբութիւնը կոչեց դարձեալ ի հիւսիս զՍարգոնի, որոյ երևելը միայն բաւական եղաւ ցածուցանել ապստամբութիւնը։ Նոյն տարին արշաւեց Սարգոնի հիւսիսային կամ փոքր Մարաց վրայ և անդուստ մտաւ յՈւրարդի (714)։ Ուրսա յաղթուեցաւ չարաչար, և լքեալ թողեալ յամենեցունց՝ խոյս ետ ի լերինս, ուր առանց գտնելու ամուր ապաստան՝ շրջեցաւ աստանդական իբրև հինգ ամիս։ Այս միջոցին Սարգոնի աւերեց զՈւրարդի. Ուրսայի քաղաքներէն շատք տրուեցան Ուլլուսունի։ Յաղթուեցաւ նաև Մուսասիրի թագաւորն Ուրզանայ, Ուրսայի վերջին դաշնակիցը։ Ուրսա այս ձախորդութեանց լուրն առնելով՝ առ յուսահատութեան չոքաւ զիւրովի։

Բայց մահուամբ Ուրսայի խաղաղ չնուաճուեցաւ Ուրարդի։ Եղբայր և յաջորդ Ուրսայի Արճիսդիս՝ վանեց զԱսորեստանեայս։ Սարգոնի այնուհետև դարձոյց իւր զօրութիւնը Մարաց և ուրիշ ազգաց վրայ։

Օբերդի թարգմանութենէն առնլով կու տանք հոս հետաքրքրքիր ընթերցողաց հատուած մը Սարգոնի արձանագրութիւններէն որ ի Խորսապատ։ «Ամրիս, Խուլուգգուի թագաւորն՝ գրժեց ուխտին որ ընդ իս։ Յղեց զդեսպան իւր առ Ուրսա արքայ Ուրարդւոյ, և առ Միգա արքայ Մոսաքայ։ Վանայ թագաւորն Իրանզու, ցոր-

չափ կենդանի էր՝ էր հնազանդ և հաւատարիմ իշխանութեան իմում. բայց բախտն երարձ զնա (մեռաւ)։ Հպատակք նորա զորդին զԱզա նստուցին գահը։ Ուրարդեցին Ուրսա Միդաս, Զիզարդու և Միսխանդի լերանց ժողովուրդներու հետ դաւաճանութիւն նիւթեց և ձգեց յապստամբութիւն զՎանեցիս։ Սոքա զմարմին տեառն իւրեանց Ազայի Թողին լերանց գլուխները։ Ազայի եղբայրն Ուլլուսուն Վանեցին, որ եգաւ յաթոռ նորա՝ միտեցաւ յՈւրարդեցին Ուրսա և ետ նմա 22 ամուր տեղիս հանդերձ պահանորդօքն որ ի նոսա։ Սրտմտեալ իմ մեծաւ բարկութեամբ՝ հանդէս արարի ամենայն զօրաց աստուծոյն Ասուր. ուխտ եդի ի սրտի իմում և խաղացի յառաջ այն երկիրներուն վրայ։ Ուլլուսուն Վանեցին իմ արշաւանացս մօտենալը լսելով՝ ել արտաքս զօրօք իւրովք և կեցաւ ամուր տեղեր ի հովիտս լերանց բարձանց։ Առի և ի մոխիր դարձուցի զքաղաք Թագաւորութեան նորա զԻզիրդի և զքաղաքսն զԻզիպիա և զԱրմիդ և ամրոցս ահագինս։ Սպանի՝ ով որ Ուրարդեցւոյն Ուրսայի կը վերաբերէր ՚ի լերինս նոցա բարձունս։ Կալայ յարքունի տանէ նորա ողիս 250. գրաւեցի 55 պարսպաւոր քաղաք, յորոց ութն հասարակ քաղաք էր, և մետասանն՝ անմատոյց բերդեր։ Ուլլուսունի 22 քաղաքները զորս Ուրսա առած էր՝ Ասորեստանի հետ միացուցի։ Ցայնժամ Ուլլուսուն իւր բարձր լեռներէն ելաւ արագ իբրև զԹռչուն և եկն առ իս աղաչելով։ Զանթիւ յանցանս նորա ներեցի, անօրէնութիւնք նորա ջնջեցան։ Զերկիր նորա ետու նմա, և հաստատեցի զնա միւսանգամ իւր Թագաւորութեան աթոռին վրայ։ Երկու ամրոցներն և 22 մեծամեծ քաղաքները զորս առած էր Ուրսա՝ տուի Ուլլուսունի, աշխատ եղէ բարձումս վասն խաղաղութեան երկրի նորա։ Ուրզանա, Մուսասիր քաղաքին Թագաւորը, Ուրարդեցի Ուրսայի ապաւինելով՝ հպատակութիւնը զլացած էր ինձ։ Ուժով զօրութեան իմոյ և խորագիտութեամբ տիրեցի Մուսասիր քաղաքին. և նա (Թագաւորը) կեանքն ազատելու համար փախաւ մազապուր և անկաւ ի լերինս։ Տիրաբար վարուեցայ ընդդէմ Մուսասիրի։ Զկին Ուրզանայի, զուստերս և զդստերս նորա, զանասունս և զամենայն զգանձն և որ ինչ էր յարքունիս նորա՝ առի, և 2,100 մարդ վարեցի ի գերութիւն, և զՀալտիա և զՊակապարդու զաստուածս Ուրսայի, նոյնպէս զաստուածս Ուրզանայի և զնուիրական անօթս նոցա առի։ Իբրև լուաւ Ուրսա արքայն Ուրարդւոյ զառն Մուսասիրի և զյափշտակութիւն աստուծոյն իւրոյ Հալտիայի՝ հար զանձն դաշունիւ և փչեաց զոգին ի մէջ բազկաց մեծամեծաց իւրոց»։

**18.** Ահա, ըստ արդի հնաբանից ոմանց՝ բեւեռագիրներէն հանուած Հայոց կամ Հայաստանի պատմութիւն մը բոլորովին նոր։

Ընդունինք թէ Ուրարդին Արարատ է, Մաննա՝ թերևս Վան կամ Եբրայեցւոց Միննին. բայց Նաիրի, Մուսասիր, Միղտիս, Միսիանդի՝ բոլորովին անլուր անուններ են. ոչինչ ընդհատ անլուր և անծանօթ են Թագաւորաց անուանք—Սատտուրի, Լուտիպրի, Պելիտտուրիս, Իսպուին, Սարտա, Մինուաս, Ուրսա, Արճիսդիս, Իրանզու, Ազա, Ուլլուսուն, և քաղաքներ՝ Սանտաքուլ, Տուրտուքա, Իզիրդի, Իզիպիա, ինչպէս նաև Հալտիա, Պակապարդու աստուածներ։ Չենք կրնար իբրև նոր գիւտ ճանչնալ և իբրև նոր ստոյգ ընդունել պատմութիւն մը, որոյ աղբիւրը, բևեռագիրք՝ բոլորովին անմատչելի են մեզ։ Ուստի Նինուէի բևեռագիրներէն հանուած այս պատմութիւնը դնելով իբր երկու հազար տարի առաջ նոյն Նինուէի դիւաններէն հանուած Մարիբասեան պատմութեան քով՝ տեսնենք Ասորեստանի տէրութեան վախճանը։

**19.** Ըստ հասարակ աւանդութեան՝ Մարաց թագաւորը Կիաքսար օգնականութեամբ Բաբելոնի կուսակալին Նաբոպողասարայ՝ յարձակելով առաւ զՆինուէ (625), և այնպէս բարձաւ Ասորեստանի տէրութիւնը։

Հրէից մատեանք, մանաւանդ մարգարէականք, ի յիշելն զկործանումն ազգաց՝ գրեթէ միշտ ցուցանեն զայն լեալ ձեռամբ ազգի կամ աշխարհակալի ուրուք, ի վրէժ մեղաց պարտեալ ազգին և կամ ի վարձ աշխատութեան աշխարհակալին։ Այսպէս Ասորեստան՝ բարկութեան գաւազան էր ի ձեռին Եհովայի ի պատուհասել զազգս (Ես. Ժ. 5, 6)։ Նոյն Եհովա կու տայ զԵգիպտոս Նաբուգոդոնոսորայ ի վարձ աշխատութեան նորա յառնուլ զՏիւրոս (Եզեկ. ԻԹ. 19, 20)։ Նոյն մատեանք ի յիշել զկործանումն Ասորեստանի՝ ամենևին ազգի անուն չեն տար։ Թագաւորաց չորրորդ գիրքն, առանց ամենևին յիշելու զանկումն Ասորեստանի՝ յետ Ասորդանայ որդւոյ Սենեքերիմայ կ'սկսի պատմել Նաբուգոդոնոսորայ Բաբելացւոց թագաւորին արշաւանքն (606) ի Պաղեստին, իմացնելով լռելեայն, թէ Ասորեստանի տէրութիւնն անցած էր առ Բաբելացիս։ Եսայի (Ժ. 12, 13, 15, 16, ԺԳ. 25) և Սոփոնիա (Բ. 13) կ'ակնարկեն զանկումն Ասորեստանի, և Նաւումայ մարգարէութեան Բ. և Գ. գլուխք թուին նկարագրել զառումն Նինուէի, բայց և այնպէս և ոչ մին կը յիշէ Մարաց և Բաբելացւոց անունը։ Անտարակոյս մեծ մաս ունեցան Բաբելացիք և Մարք յանկման Ասորեստանի. բայց այս գործը կատարուած կ'երևի մանաւանդ շատ ազգերու միացեալ զօրութեամբ։ Եզեկիէլ որ ժամանակակից էր՝ թերևս զայս կամի ակնարկել ի վերջնում մասի ԼԱ. գլխոյն, ուր կը խօսի զԱսորեստանէ և զորոյ սկիզբը բերինք ի վերոյ.—«Մեծացաւ մեծութեամբ (Ասորեստան), և հա-

սին ծայրք նորա յամպս։ Տեսի զհպարտութիւն նորա և մատնեցի զնա ի ձեռս իշխանաց ազգաց։ Աւարեին զնա ի կորուստ, և հանեին սատակեցին զնա օտարք ժանտագործք ազգաց, և տապալեցին ըզնա ի վերայ լերանց։ Ցամենայն ձորս անկան ոստք նորա, և խորտակեցաւ սաղարթն նորա ընդ ամենայն դաշտս երկրի, և իջին ի հովանւոյ նորա ամենայն ազգք ազանց, և յատակեցին զնա, և ի գլորել նորա հանգիստ եղև ամենայն թռչնոց երկնից, և ի սաղարթն նորա հասին ամենայն գազանք վայրի»։

Եզեկիելի այս այլաբանական յօդուածը եթէ իմաստ մը ունի՝ այս է։ Եզեկիէլ ԼԱ. գլխոյն առաջին մասին մէջ խօսելով զԱսորեստանէ՝ ինչպէս տեսանք, նմանեցոյց այս մեծ և հզօր պետութիւնը Լիբանանու նոճւոյ մը, որ բարձրացեալ և տարածեալ բըռնած էր բոլոր երկիր։ Հիմա այս երկրորդ մասին մէջ կը ցուցնէ, թէ այս մեծ նոճին կործանեցին ոստք նորա, ժանտագործ ազգեր, զորս Եզեկիէլ կը նմանեցնէ վայրենի թռչնոց և գազանաց երկրի, որ ընդ հովանեաւ, այսինքն ընդ իշխանութեամբ նորա էին, և ի գլորել նորա գտան հանգիստ, այսինքն զազատութիւն իւրեանց։ Նթէ Եզեկիելի միտքն այս է՝ ճշմարիտ է։ Արդարև առ կենդանութեամբ Եզեկիելի, այն է Ասորեստանի կործանման սկիզբը՝ ազատութիւն գտան ազգերը։ Բայց այս ազատութիւնը երկար չը տևեց։ Ասորեստանի աշխարհակալութեան ոգին անցաւ Բաբելացւոց և Մարաց, ուստի և Ասիոյ աշխարհավարութիւնը նոր և աւելի որոշ կերպարանք առաւ, զոր գիտել կարևոր է ոչ միայն ընդհանուր, այլ և մեր ազգային պատմութեան համար։

**20.** Նաբուգոդոնոսոր յառաջ տարաւ և կատարեց սեմական կամ արամէական ազգաց միութեան գործը։ Պատերազմն 604-ին ն. քան զՔր. առ Եփրատ գետով ի Կարքամիս (Երեմ. ԽԶ. 1,2), ուր յաղթուեցաւ Նեքաւով Եգիպտոսի թագաւորը,—որ յետ անկման Ասորեստանի եկած էր յԱսիա, միւսանգամ առնուլ եգիպտական իշխանութիւնը եփրատական երկիրներուն վրայ՝—ամեն արգելք վերցուց Բաբելացի աշխարհակալին առջև։ Ոչ միայն Հրէաստան, Փիւնիկէ, Եգիպտոս, այլ և մանր մանր թագաւորութիւնք կամ իշխանութիւնք սեմական ցեղից որ ի Պաղեստին և ի շրջակայս, ինչպէս Եդոմ, Մովաբ, Ամմոն,—Արաբացի ցեղեր, զորս թերևս իբրև անկըշան թողած էին Ասորեստանցիք՝—նուաճեցան հետզհետէ։ Թագաւորաց չորրորդ գիրքը կը յիշէ նախ համառօտիւ Նեքաւովայ յարձակումն Ասորեստանցւոց երկիրներուն վրայ յայնկոյս Եփրատայ.— «Յաւուրսն յայնոսիկ ել Փարաւոն Նեքաւով արքայ Եգիպտացւոց ի վերայ [թագաւորին](ժագաւորին) Ասորեստանեայց առ Եփրատ գետով» (Դ.

Թագ. ԻԴ. 29)․ և ապա յաջորդ գլխոյն մէջ կ՚ակնարկէ զպարտութիւն և զկորուստ նորա.—«Եւ ոչ ևս, ասէ, յաւել արքային Եգիպտացւոց ելանել յերկրէ իւրմէ, քանզի առ արքային Բաբելոնի ի հեղեղատէն Եգիպտացւոց մինչև ցգետն Եփրատ զամենայն ինչ, որ էր արքային Եգիպտացւոց» (Դ. Թագ. ԻԴ. 7) Պաղեստինու ազգաց նուաճումն յայտնի է մարգարէական գիրքերէն։ Եհովա պատուէր կու տայ Երեմիայի՝ կապանք և անուր ղրկել Պաղեստինու թագաւորաց, իմացնելով թէ պիտի մատնուէին Նաբուգոդոնոսորայ ձեռքը.—«Արա դու քեզ կապանս և անուրս, և առաքեսցես զայն առ թագաւորն Եդովմայեցւոց, և առ թագաւորն Մովաբացւոց, և առ թագաւոր որդւոցն Ամմոնայ, և առ թագաւորն Տիւրոսի, և առ թագաւորն Սիդոնացւոց, ի ձեռն հրեշտակաց նոցա, որ գան յԵրուսաղէմ առ Սեդեկիա արքայ Յուդայ. և պատուիրեսցես նոցա ասել ցլոեարս իւրեանց. Այսպէս ասէ Տէր զօրութեանց Աստուած Իսրայելի. Ես արարի զերկիր և որ ինչ ի վերայ երեսաց երկրի, զօրութեամբ իմով և բազկաւ իմով բարձու, և տաց զնա ում և կամ իցէ առաջի աչաց իմոց. և արդ ես եմ որ ետու զամենայն երկիր ի ձեռս Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց, ծառայի իմոյ, և ծառայեսցեն նմա ամենայն ազգք. և եղիցի ազգ և թագաւորութիւն, որ ոչ ծառայեսցեն Նաբուգոդոնոսորայ արքայի Բաբելացւոց և որք միանգամ ոչ մուծցեն զպարանոցս իւրեանց ընդ լծով արքային Բաբելացւոց՝ սրով և սովով և մահուամբ արարից այցելութիւն ի վերայ ազգին այնորիկ, մինչև սատակեսցին ի ձեռաց նորա» (Երեմ. ԻԷ. 2—8)։ Եգիպտացւոց պարտութենէն ետքը դիւրին էր տեսնել, թէ Պաղեստին պէտի չկրնար դիմանալ Բաբելացւոց զօրութեանը. ուստի հաւանական է, թէ Երեմիա Յուդայի օգնութիւնը խնդրելու եկող պատգամաւորաց տուաւ միևնոյն խրատը, զոր կու տար հեռատեսութեամբ իւր ազգին, յորդորելով զնոսա լինել անձնատուր Նաբուգոդոնոսորայ՝ ազատելու համար ի սպառ կործանելէ։ Արդարև բոլոր երկիրը չտըրուեցաւ Նաբուգոդոնոսորայ, և ոչ ամէն ազգ և թագաւորութիւն ծառայեցին գոռոզ աշխարհակալին. բայց Պաղեստինու ազգաց համար կատարուեցաւ Երեմիայի գուշակութիւնը։ Յուդայի նուաճումը կը պատմեն Թագաւորաց գիրք (Դ. Թագ. ԻԴ. ԻԵ.). իսկ Փիւնիկեցւոց կամ Տիւրոսի համար Եզեկիէլ ժամանակակից արդէն առնուած կը դնէ ի Նաբուգոդոնոսորայ յառաջ քան զմտանել Բաբելացւոց յԵգիպտոս. - «Նաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց աշխատեցոյց զզօրս իւր աշխատութեամբ մեծաւ ի վերայ Տիւրոսի. . . վասն այնորիկ այսպէս ասէ Տէր. Ահաւասիկ տաց Նաբուգոդոնոսորայ արքայի Բաբելացւոց զերկիրն Եգիպտացւոց, և առցէ զբազմութիւն նորա, և

աւարեսցէ զաւար նորա, և կողոպտեսցէ զկողոպուտ նորա, և եղիցի այս վարձ զօրաց նորա. փոխանակ հարկին յորում ծառայեաց ինձ ի Տիւրոս՝ ետու նմա զերկիրն Եգիպտացւոց» (Եզեկ. ԻԹ. 18—20)։ Եգիպտոս, Ցուդա և Փիւնիկէ իյնալէն ետքը՝ հաւանական չէ թէ Եդոմայ, Մովաբու և Ամմոնացւոց պէս տկար զօրութիւններ կրցան դիմանալ հզօր հակառակորդին։ Նաբուգոդոնոսոր յետ ի գլուխ հանելոյ, գէթ անուամբ, Սեմական ազգաց միութիւնը՝ դարձաւ ի Բաբելոն զքաղիլ մեծամեծ շինութիւններով։ Միջին Ասիոյ վիճակն այսպէս տևեց առ յաջորդօք Նաբուգոդոնոսորայ մինչև ցանկումն Բաբելոնի։ Ուստի թողլով որ ինչ զՆաբուգոդոնոսորայ և զյաջորդաց նորա պատմին ի գիրսն Դանիելի, որ իբրև վերջին ժամանակի գործ և մէտ ի պատմել հրաշալիս չունի պատմական յարգ՝ գանք առ Մարս և Պարսս։



## Բ. ՄԱՐՔ ԵՒ ՊԱՐՍՔ.

*1. Աշխարհագրական դիրք Մարաց եւ Պարսից: 2. Մարք նախ քան զանկումն Ասորեստանի՝ ըստ Յունաց: 3. Մարք յետ անկման Ասորեստանի՝ ըստ Յունաց. Աժդահակ եւ Կիւրոս. Վետայի ապլաքանութիւնը: 4. Մարք՝ ըստ Հրէից գրոց: 5. Հայք առ Մարօք՝ ըստ Հրէից գրոց: 6. Հայոց յարաբերութիւնն ընդ Մարս. Քսենոփոն, Խրատք Կիւրոսի: 7. Հայք՝ դրացի Մարաց. Հայոց Մարաստանն ըստ վիպասանաց: 8. Պատմութիւն մը ի Քսենոփոնէ: 9. Քսենոփոնի պատմութեան յարգը: 10. Պատճառք անկման Բաբելոնի՝ ըստ Հրէից գրոց: 11. Պատճառք անկման Բաբելոնի՝ ըստ յոյն պատմագրաց: 12. Միացեալ տէրութիւն Մարաց եւ Պարսից՝ ըստ Հրէից գրոց. Կիւրոս: 13. Վարչական դրութիւն արեւելեան միապետութեանց. Կիւրոս, Կամբիւս, Դարեհ Վշտասպեայ: 14. Պատմական համառօտութիւն մը զՀայոց: 15. Հայք ի Կիւրոսէ մինչեւ Դարեհ Վշտասպեայ. Թէ ի՞նչ կը պատմէ Խորենացին: 16. Դարեհի նոր վարչական դրութեան հետեւանքը. Հայոց դէմ պատերազմ. Պիսիդունի արձանագրութիւնը: 17. Արարատեան թագաւորութեան վախճանը. Արմենիա՝ նահանգ Պարսից: 18. Անուանք «Արմենիա, Հայք»: 19. Պատմական դիտողութիւն զՀայ ցեղէն եւ զԱրարատայ: 20. Արմենիա յետ Դարեհի մինչեւ Աղեքսանդր մեծ: 21. Սատրապք Արմենիոյ: 22. Գլխաւոր յատկութիւն Արմենիոյ ժողովրդոց ըստ Հերոդոտոսի եւ Քսենոփոնի: 23. Հայք՝ հովիւ եւ երկրագործ. Մշեցիք. Ձիաբուծութիւնք: 24. Վկայութիւն մը ի Քսենոփոնէ: 25. Հայք ընդ վաճառաշահ ազգս: 26. Ուշադրութեան արժանի յօդուած մը ի Քսենոփոնէ:*

**1**. Մարք և Պարսք, երևելիքն ի մէջ արիական ցեղից՝ կը բնակէին յայնկոյս Տիգրիսի և էին քան զայլ արիական ցեղս մօտագոյնք երկրաւ Ասորեստանեայց. լերանց գօտի մը միայն կը բաժնէր զնոսա Տիգրիսի արևելեան հովտէն յորում էր Ասորեստան: Պարսք բռնած էին այն լեռներէն անդին հարաւային մասն առ ծովուն, որ ցարդ յանուն նոցա կը կոչուի «Ծոց Պարսից»: Ի հիւսիսոյ Պարսից էր Մարաց երկիրը, որ կը ձգուէր մինչև Կասպից ծով: Մարաց այս ընդարձակ երկիրը երկու բաժնելով աշխարհագիրք՝ ստորին (հարաւային) մասը կ'անուանեն Մեծ Մարք, որ երկրորդական գաւառով մը

կը բաժնուէր վերին (հիւսիսային) մասէն որ Փոքր Մարք կը կոչուի։ Հրէից մատեանք առ Սաղմանասարաւ և առ Նաբուգոդոնոսորա յայտնապէս Մարաց կ՚ընծայեն այս վերին մասն, ինչպէս յայտնի է յանուանէ Գովզան գետոյն, առ որով բնակեցոյց Սաղմանասար Իսրայելի գերիները.—«Եւ բնակեցոյց առ Գովզան գետով ի Քաղա և ի Քաբովր և ի քաղաքս Մարաց» (Դ. Թագ. ԺԷ. 6)։ Գովզան, որպէս արդէն ասացաւ՝ էր մին ի գետոց որ ի հարաւոյ ի հիւսիս հոսելով կը թափին Կասպից ծովը։

**2.** Մարաց, ինչպէս նաև Պարսից և ուրիշ արիական ազգաց հին պատմութիւնը շատ մութ և անստոյգ է։ Ըստ լեզուաբանական և ազգաբանական հետազօտութեանց երբ ապացուցեալ կրնայ համարուիլ, թէ Արմենիոյ, Փոքուն Ասիոյ և ուրիշ երկիրներու հնդեւրոպական ազգաց պէս՝ Մարք ևս ուրիշ արիական ցեղերու հետ եկած էին յերկիր իւրեանց նախապատմական ժամանակ, քան զինքեանս հնագոյն ազգերն, զՏուրանեանս և զՔուշեանս վանելով կամ ընկղմելով յիւրեանս (Մասբեր. Գլ. ԺԲ.)։ Ըստ Հերոդոտոսի, որ յոյն պատմիչներուն հնագոյնն է՝ Մարք ի սկզբան այլ և այլ ազատ ցեղերու բաժնուած էին։ Իբր 708-ին նախ քան զՔր. Դիովկէս եղաւ, որ զառաջինն միացնելով այն ցեղերն՝ օրէնք և կարգ դրաւ։ Հերոդոտոս զԴիովկ կը համարի նաև շինիչ եօթնպարսպեան Եկբատանայ, մայրաքաղաք մեծ և ամուր, ուր ժողովեց Դիովկէս Մարաց երևելիներն և զօրաւորները։ Դիովկիսի յաջորդեց, ըստ նոյն Հերոդոտեայ, Փրաւորտ (655—638), որ յետ հնազանդեցուցանելոյ զՊարս՝ սպանաւ ի կռուի ուրեք ընդդէմ Նինուէի։ Բայց Մարաց տէրութեան բուն հիմնադիր կը համարուի Կիաքսար Ա. (638—595) ըստ Հերոդոտեայ որդի Փրաւորտի։ Մինչ Կիաքսար Նինուէի դէմ յարձակուելու կը պատրաստուէր՝ Սկիւթացիք մեծ բազմութեամբ եկան (615) ի հիւսիսոյ ոչ միայն Մարաց, այլ և գրեթէ բոլոր Ասիոյ վրայ։ Յետ իբր եօթն ամաց Կիաքսար գաւով սպաննելով Սկիւթացւոց գլխաւորներն ի խնջոյս՝ վանեց այս յելուզակները և օգնական գտնելով իւր զԲաբելացիս՝ առաւ զՆինուէ և կործանեց Ասորեստանի տէրութիւնը։

**3.** Յունաց պատմիչները, Հերոդոտոս, Կտեսիաս, Քսենոփոն, ինչպէս նաև մեր Խորենացին՝ բազում ինչ հակառակ միմեանց կը պատմեն զՄարաց յետ անկման Ասորեստանի։ Ըստ Հերոդոտոսի՝ իբր տասն ամօք յետոյ քան զառն Նինուէի, Կիաքսար Ա. յետ նուաճելոյ զՊարսս և զայլ արիական ցեղսն որ յայնկոյս Տիգրիսի՝ արշաւեց ի Փոքր Ասիա, ուր քան զայլ հնդեւրոպական ցեղս հզօրագոյն էին յայնժամ Լիւդացիք, որոց կը թագաւորէր Ալիատտէս

(625—565)։ Վեցամեայ պատերազմէ մը ետքը, օր մը ի ճակատել երկուց կողմանց ի մարտ՝ եղև խաւարումն արեգական։ Երկուտեք չարագուշակ համարուած այս բնական երևոյթին հետևանքը եղաւ հաշտութիւն (610) և խնամութիւն ի մէջ երկուց թագաւորաց, որ, եթէ պարտ իցէ հաւատալ Հերոդոտեայ՝ իբրարու բազուկ ցտելով, յարենէն հոսելոյ ի վերաց անտի կնքեցին դաշինքը։ Ալիւս գետ եղաւ սահման ի մէջ երկուց ազգաց, և Կիաքսար դառնալով յԵկբատանս մեռաւ 595-ին, թողլով զթագաւորութիւնն որդւոյ իւրում Աժդահակայ, յետ որոյ տէրութիւնն Մարաց անցաւ ի Կիւրոս Պարսիկ, թոռն Աժդահակայ ի դստերէ նորա Մանդանեայ։

Հերոդոտոսի պատմութիւնն զծննդենէ և զսննդենէ Կիւրոսի նշանաւոր է իւր ծագմանը կողմանէ։ Աժդահակ ըստ Հերոդոտոսի երազ կը տեսնէ, թէ որդին որ ի Մանդանեայ ծնանելոց էր՝ պիտի թագաւորէր փոխանակ հաւուն իւրոյ, ուստի ի ծնանել մանկանն պատուիրեց Աժդահակ Արբակ անուն նախարարի մը՝ տանել և ըսպանանել զնա գաղտ։ Արբակ չկատարեց հրամանը, և Կիւրոս սնանելով Աժդահակայ հովուին քով, երբ տասնամեայ էր՝ ճանչցուեցաւ և ղրկուեցաւ առ հայր իւր ի Պարսս։ Կիւրոս ի չափ հասեալ կ'ապստամբեցնէ զՊարսս ընդդէմ Մարաց. Աժդահակ կը բռնուի, և Կիւրոս կ'առնու թագաւորութիւնը։

Հերոդոտոսի պատմութիւնը զԱժդահակայ և զԿիւրոսէ յառաջ եկած է հին կրօնական այլաբանութենէ մը, որ կը գտնուի Հնդկաց նուիրական գրոց միոյն, Վեդայի մէջ։ Ժամանակաւ Աժի-տահագա կապած էր երկինքը պատող կովերը, որոնց կաթը կ'ոռոգէր զերկիր։ Թրիդա աստուածութիւնը սպաննելով զԱժի-տահագա՝ արձակեց կովերը, և կաթն սկսաւ տեղալ յերկիր։ *Աժի* և *տահագա*, ըստ Պարսից զոհակ՝ հին սանսքրիտ բառեր են, որոց կը պատասխանեն հայերէն *աւծ* (օձ) կամ *իժ* և *զոհել* (սպաննել) բառերը. ուստի Աժի-տահագայն այլաբանական անունն է չար ոգւոյն որ է օձ սպանող։ Իսկ Թրիդա, ըստ Պարսից *Ֆրիտուն*, հայերէն *փրկող*՝ էր Եանա, Թրիդա և Քրիշասա կոչուած երից աստուածային զօրութեանց մին։ Աժդահակայ անուան նմանութիւնն ընդ Աժի-տահագայի՝ այն կրօնական այլաբանութիւնն Աժդահակայ և Կիւրոսի վրայ դարձնելու առիթ տուած էր Պարսից, յորոց առաւ Հերոդոտոս։ Աժդահակ կ'ուզէ սպանանել զԿիւրոս. Կիւրոս Արբակայ հնարիւք կ'ազատուի մահուանէ և սպանանելով զԱժդահակ՝ կ'ազատէ զՊարսս որ ծառայ էին Մարաց։ Ըստ Հայոց՝ Աժդահակ կ'ուզէ դաւով սպաննել զՏիգրան. Տիգրան կ'ազատի դաւէն խորագիտութեամբ Տիգրանուհւոյ և ըսպանանելով զԱժդահակ՝ կ'ունայնացնէ Աժդահակայ նպատակը, որ

էր տիրել Հայոց։ Ահա Վետայի այլաբանութիւնը, որ պատմական ձև առած է։ Զարմանք չէ որ Հնդկաց կրօնական այլաբանութիւնն այսպէս փոխուելով երկու ազգաց մէջ կ'առնու պատմական կերպարանք։ Եթէ փնտռենք՝ պիտի գտնենք թերևս արևելեան աստուածաբանութեան այս այլաբանութիւնն ուրիշ ազգի կամ աղանդի մը մէջ ուրիշ ձև առած։

Ըստ Կտեսեայ՝ Կիւրոս ոչ թոռն էր և ոչ ազգական Աժդահակայ, այլ բոլորովին օտար, և ապստամբելով կալաւ զԱժդահակ և թագաւորութիւնը դարձոյց առ Պարսս։ Ըստ Խորենացւոյն՝ Հայոց թագաւորը Տիգրան սպաննելով զԱժդահակ որ կամէր դաւով սպաննել զնա՝ եբարձ զտէրութիւնն Մարաց։ Ըստ Քսենոփոնի՝ Աժդահակ (595—560) խաղաղութեամբ կը մեռնի ի թագաւորութեան իւրում, և կը յաջորդէ նմա որդին Կիաքսար Բ. (560—536), առ որով առնուեցաւ (538) Բաբելոն, և որովհետև անորդի էր Կիաքսար՝ յաջորդեց նմա քեռորդին Կիւրոս։ Ուստի ըստ Քսենոփոնի՝ հարստութեան կամ տիրող ազգատոհմի փոփոխութիւն էր այս, քան նուաճումն յօտարէ։

Ի յոյն պատմագրաց որ յաւանդութենէ առեալ կու տան այս տեղեկութիւններն զՄարաց և զՊարսից՝ և ոչ մին ժամանակակից է։ Ժամանակակից կամ գէթ մօտագոյն ժամանակաւ են Հրէից մատեանք, յորս Մարաց վրայ սաչափ միայն գրուած կը գտնենք.—

4. Մարք, ըստ Հրէից գրոց, ինչպէս տեսանք՝ առ Ասորեստանեօք հպատակ էին նոցա, և յանկման Ասորեստանի չեն յիշուիր յանուանէ։ Ի գիրս Հրէից Մարք իբրև ազատ թագաւորութիւններ կ'սկսին յիշուիլ յառման Բաբելոնի.—«Ահաւասիկ յարուցից ի վերայ նոցա (Բաբելացւոց) զՄարս, որ առ ոչինչ համարին զարծաթ և ընդ ոսկի ոչ ախորժեն» (Ես. ԺԳ. 17)։ «Զարթոյց Տէր զոգի թագաւորացն Մարաց, զի բարկութիւն նորա ի վերայ Բաբելոնի» (Երեմ. ԾԱ. 17)։ «Առէք նշան ի վերայ երկրիդ, փող հարէք ընդ ազգս ամենայն, կազմեցէք ի վերայ դորա գունդս . . . կոչեցէք ի վերայ նորա զազգս և զթագաւորս Մարաց և զկուսակալս նոցա և զամենայն երկիր իշխանութեան նոցա» (Երեմ. ԾԱ. 27, 28)։ Այս վկայութիւններէն, որ շատ ետքը գրուած չեն քան զանկումն Բաբելոնի՝ կը տեսնուի նախ՝ թէ Մարք այլ և այլ թագաւորութեանց կը բաժնուէին, ինչպէս յայտնի է յոգնակի թիւէն վերի օրինակներուն մէջ ըստ եբրայեցերէն բնագրին.—«Զարթոյց Տէր զոգի *թագաւորացն* Մարաց». «Կոչեցէք ի վերայ նորա *զազգս* և *զթագաւորս* Մարաց». «Եւ առի զբաժակն ի ձեռանէ Տեառն և արբուցի ամենայն ազգաց առ որս առաքեաց զիս Տէր... Փարաւոնի արքային Եգիպտացւոց...և

ամենայն *Թագաւորացն* Մարաց» (Երեմ. ԻԵ. 17, 19, 25)։ Գիտել պարտ է, զի Հրէից մատեանք Մարօք կ'իմանան բոլոր արիական ցեղերը։ Երկրորդ՝ կը տեսնուի թէ Մարաց դրացի ազգերը պահած էին զանկախութիւն իւրեանց. քանզի յառման Բաբելոնի իբրև Մարաց գործակից ազատ թագաւորութիւններ կը յիշուին յանուանէ նաև Արմենիոյ հնդեւրոպական թագաւորութիւնք.—«Հրաւիրեցէք ի վերայ նորա զթագաւորութիւնս Արարատայ, Միննւոյ և Ասքանազայ» (Երեմ. ԾԱ. 27)։ Այսպէս ըստ Հրէից գրոց՝ արիական ազգեր, որոց մէջ գլխաւոր էին Մարք՝ յետ անկման Նինուէի եղան ազատ և զօրացան, մինչև կարող լինել ուրիշ համացեղ, գլխաւորապէս Արմենիոյ ազգաց հետ գալով առնուլ զԲաբելոն և բառնալ ի սպառ բաբելական կամ քաղդէական պետութիւնը։

**5.** Յետ այսչափ լոյս առնլոյ զարիական ազգաց, մանաւանդ զՄարաց, յանկմանէ Ասորեստանեայց մինչև ցանկումն Բաբելոնի՝ տեսցուք համառօտիւ զԱրմենիա։ Դ. Թագաւորաց ԺԹ. 37 համարէն գէթ ընդհանրապէս ցուցուեցաւ, թէ Արմենիա, մանաւանդ Արարատ, ազատ երկիր և թագաւորութիւն էր առ Ասորեստանեօք, գէթ Ը. դարուն սկիզբը նախ քան զՔր. (Տես էջ 39)։ Արարատեան ազգին յարաբերութիւնն ընդ Ասորեստանեայս բարեկամակա՞ն էր թէ թշնամական՝ յայտնի չէ։ Թէ ի Խորենացւոյն և թէ բևեռագիրներէն բերուած վկայութիւնք առ այս, ինչպէս տեսանք (էջ 40-45)՝ գէթ առ այժմ հաւատարմութեան արժանի պատմութիւններ չեն։ Իբրև պատմականապէս ապացուցեալ կրնանք համարել սակայն, թէ Արմենիոյ թագաւորութիւնք, յանուանէ Արարատեանն, մնացին ազատ յետ անկման Ասորեստանի առ Մարօք, մինչև կարել գործակից գըտանել Մարաց յառմանն Բաբելոնի։ Այսչափ միայն կը մակաբերուի Հրէից գիրքերէն զՀայոց։

**6.** Ոչինչ ընդհատ ստուգութեամբ կրնայ մակաբերուիլ ի Քսենոփոնէ, թէ Հայոց յարաբերութիւնն ընդ Մարս բարեկամական կամ գէթ դաշնակցական էր։ Այս վկայութիւնն արդարև Քսենոփոնի «Խրատք Կիւրոսի» (*Քիրոպէտի*) կոչուած գիրքէն է, որ տեսակ մը վիպասանութիւն կրնայ համարուիլ, բայց չէ անմասն ի պատմական ստուգութենէ։ Տարակոյս չկայ, թէ այս խրատական վէպին մէջ Աժդահակայ, Կիաքսարայ, Կիւրոսի և այլոց բերանը դրուած բանք՝ ըստ ձևոյն վիպասանական են. բայց արիական դաստիարակութեան սկզբունքը, յորոց վերայ կը հիմնէ Քսենոփոն իւր խրատները, ինչպէս նաև պատմական դէպք՝ չկարեն լինել կեղծ, քանզի Քսենոփոն կը գրէր այս խրատն առ կրտսերն Կիւրոս, որ 100 ամօք միայն յետոյ էր քան զհաւր նախնին Կիւրոս մեծ։ Քսենոփոն ոչ միայն, հա-

մաձայն Հրէից գրոց, զՀայս ի վաղուց ազատ թագաւորութիւն կը դնէ առ Կիւաքսարաւ, այլ և դաշնակից և ընտանի Մարաց և Պարսից։ Հայոց այս յարաբերութիւնը շատ բնական կ'երևի, եթէ նկատենք այս երկու ազգաց աշխարհագրական դիրքը։ Մարաց երևելի մէկ մասն այնպէս գիրկընդխառն էր ընդ երկրին Հայոց՝ մինչև Մարք կամ Մարաստան անուամբ կազմել յետ ժամանակաց Արմենիոյ միացեալ թագաւորութեան մէկ գաւառն առ Արշակունեօք։

7. Վերագոյն ցուցաւ, թէ Մարաց երկիրն երկու կը բաժնուէր, Հարաւային կամ Մեծ Մարք, և Հիւսիսային կամ Փոքր Մարք, որ կը ձգուէր մինչև Կասպից ծով, և առ Մասեօք՝ մինչև ցԵրասխ և անդր ևս։ Ցայսմ Կասպիական մասին, այն է ի Փոքր Մարս՝ դրացի էին Հայք (Արտաշեսեան թագաւորութիւնը) Մարաց։ Երասխ և Մասիք հասարակաց էին այս երկու ազգաց, այնպէս որ Ծննդոց Եբրայական բնագրին խօսքն զատապանէն, թէ նստաւ «ի լերինս Արարատայ» ի թարգմանութիւնս ինչ է «ի լերինս Կորդուաց» կամ «Մարաց»։ Թէ Մասեաց արևելեան մասն ի հնումն Մարաստան էր և յետ անցանելոյ նորա ի Հայս առ Արշակունեօք տակաւին կը կոչուէր Մարք՝ յայտնի է Հայոց հին երգերէն, ուր ասի զԱրտաւազդայ որդւոյ Արտաշիսի, թէ «Անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ» (Խոր. Ա. Լ.)։ Խորենացին կը վկայէ թէ Մարակերտ էր ի դաշտին Շուրարայ, որ Մասեաց արևելեան դին կ'իյնար։ Մարակերտ «է ի դաշտին որ անուանեալ կոչի Շարուրայ» (Խոր. անդ)։ Այս Մարք էին ի սկզբան առ Արշակունեօք հզօր նախարարութիւն, Մուրացան կոչուած։ Խորենացին Հայոց երգերէն առնլով այս նախարարութեան սահմանը կը ցուցնէ հին աշխարհագրական անուններով, և նախարարութիւնը կը համարի սերեալ Աժդահակայ Մարաց թագաւորին ընտանիքէն, զորս գերեալ կը պատմէ ի Տիգրանայ առաջնոյ, որ ըստ Մարիբասեան պատմութեան՝ Աժդահակայ հետ կռուելով յաղթեց, և ջնջեց Մարաց տէրութիւնը։—«Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ և զբազումս ի սերմանէ Աժդահակայ աղջկունս հանդերձ պատանեկօք և այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի՝ բնակեցուցանէ յարևելեայ ուսոց մեծի լերինն, մինչև ի սահմանս Գողթան, որ են Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք և որ այլք առ եզերբ գետոյն (Երասխայ) դաստակերտք, յորոց մինն է Վրանջունիք, մինչև հանդէպ ամրոցին Նախջուանու, և զերիս աւանսն զԽրամ և զՋուղայ և զԽօշակունիս։ Իսկ ի միւս կողմանէ գետոյն զբոլոր դաշտն, որոյ գլուխն Աժդանական, մինչև ցնոյն ինքըն ամուրն Նախճաւանոյ։ Բայց զնախասացեալ կինն Անոյշ բնակեցուցանէ որդւովքն իւրովք յանդորրութեան սպառուածի փլածի

մեծի լերինն, զորմէ լեալ ասեն յահագին իմն շարժմանէ։ Իսկ պաշտօնեայս տայ Անուշայ ի նոյն Մարաց, որ առ ստամբ լերինն բնակեցան» (Խոր. Ա. Լ.)։ Բայց ինչպէս արդէն տեսանք՝ Տիգրանայ և Աժդահակայ պատերազմը Վեռայէն առնուած վէպ է, որուն պատմական կերպարանք տուած է Խորենացւոյն աղբիւրը։ Մուրացան նախարարութիւնը ջնջուեցաւ առ Արտաշիսիւ (Խոր. Բ. ԾԱ.), բայց Մասեաց արևելեան կողման համար Մարք անունը մնաց մինչև չորրորդ դար։ Առ Բուզանդայ ստէպ այսպէս կոչուած կը գտնենք Հայոց այն մասը։ Այս պատմիչն յիշելով Շապհոյ զօրաց արշաւելն ի Հայս առ Արշակաւ, որ այն արշաւանաց ժամանակ Ատրպատականի կողմը կը գտնուէր՝ ասէ. «Գուժկան հասանէր առ թագաւորն Արշակ, և ասեն նմա. դու աւագիկ առաջոյ սպասես թշնամեացն, նստիս յԱտրպատականի, իսկ թշնամին զթիկամբ՝ անկեալ կոտորեցին զաշխարհս։ ... Ապա Վասակ սպարապետ... թողոյր զթագաւորն Արշակ յամուր տեղւոջ ուրեմն *յերկրին Մարաց* հանդերձ սպասաւորօքն, ինքն գայր հասանէր ի միջնաշխարհն Հայոց, ի գաւառն Այրարատու» (Բուզ. Դ. ԻԴ.)։ Բուզանդ առ նոյին Արշակաւ և ապա առ Պապաւ ուրիշ նահանգաց հետ երկիցս ապստամբեալ կը յիշէ ի Հայոց Մարաց աշխարհ մը, որով վերոյիշեալ երկիրը կ'իմացուի.— «Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Տմորեաց և ամուր աշխարհն Կորդեաց։ Յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հայոց տունն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպատական աշխարհաւն, յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր *աշխարհն Մարաց*, յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից» (Բուզ. Դ.Ծ.)։ «Սպարապետն Հայոց Մուշեղ (առ Պապաւ) հարկանէր զայնոսիկ որք ապստամբ եղեն ի թագաւորութենէն Արշակունեաց։ Նախ հարկանէր զտուն թագաւորին Հայոց որ յԱտրպատականին էր, ... և զայլ գաւառս ապստամբեալս յարքայէն Հայոց, զԿորդուս և զԿորդիս և զՏմորիս ... *եւ զկողմանսն Մարաց*, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց.... հարկանէր և զերկիրն Արձախայ»։

Ց. Քսենոփոն յայտնի կը ցուցնէ Հայոց բարեկամական կամ դաշնակցական յարաբերութիւնն ընդ Մարս հետևեալ պատմութեամբ, որ եթէ ոչ ըստ ձևոյն՝ գէթ ըստ էութեան պատմական է։ Կիւրոս, որ ինչպէս վերագոյն յիշուեցաւ, սպարապետ կարգեալ էր ի Կիաքսարայ ի պատերազմին Մարաց ընդդէմ Բաբելոնի՝ յետ տեղեկանալոյ Մարաց զօրութեան՝ կը հարցունէ ցԿիաքսար. «Ասէիր թէ թագաւորն Հայոց արհամարհեաց զքեզ. և այժմ լսելով զգալ թշնամւոյն ի վերայ մեր՝ ոչ զօրք կու տայ և ոչ սակ»։ «Այնպէս է, ասէ Կիաքսար. ուստի վարանեալ եմ. չեմ գիտեր թէ երթամ Հայ-

ոց վրայ ի պատերազմ, թէ լաւ է առ այժմ թողուլ, գուցէ ուրիշ թշնամեաց վրայ յաւելունք նաեւ զՀայս»։ Կիւրոս ասէ. «Հայոց քաղաքներն ամուր տեղեր են թէ ի գիւղի»։ «Ամուր տեղեր չեն, ասէ Կիաքսար, ունին սակայն լեռներ յորս կարեն ամրանալ վաղվաղակի. եւ գիւղին չէ առնուլ զնոսա՝ բայց եթէ երկար պաշարմամբ, որպէս արար հայր իմ»։ «Եթէ ղրկես զիս բաւական հեծելովք՝ ասէ Կիւրոս, աստուածոց օգնութեամբ կարեմ առնել այնպէս, զի թէ զօրք տան Հայք եւ թէ սակ. եւ յուսամ թէ աւելի բարեկամ լինին մեզ քան զոր էին երբեմն»։ Ուրախ եղաւ Կիաքսար եւ կը յուսար, թէ Կիւրոս կարող էր առանց պատերազմի վճարել այս գործը, մանաւանդ գիտէր, թէ Կիւրոս ծանօթ էր արքայորդւոյն Հայոց իբրեւ որսակից նմա ի մանկութեան։ Կիւրոս ըստ նախկին սովորութեան իւրում՝ հեծեալ եւ հետեւակ զօրօք եւ որսոյ պառականօք անկաւ յուղի, յետ մատուցանելոյ զոհս Արամազդայ վասն յաջողութեան գործոյն։ Մինչ կ'երթային՝ նապաստակ մը ելաւ, եւ արծուի մը խոյանալով առաւ նապաստակը եւ տարաւ ի բլուր ինչ մօտակայ։ Կիւրոս բարենշան համարեցաւ այս դէպքը, որպէս թէ յաջողելոց էր որսին նըպատակը։ Կիւրոսեանք մօտեցան Հայոց սահմանը։ Ազդ եղեւ թագաւորին Հայոց, թէ Կիւրոս Պարսիկ ելած է յորս. եւ արդարեւ Կիւրոս եւ որ ընդ նմայն էին՝ կ'որսային կինճ, եղջերու, այծեամ եւ ցիռ որ շատ էին այն կողմերը (Խոր. Գ. ԾԵ.)։ Այս միջոցին երէց որդի թագաւորին Տիգրան բացակայ էր, եւ թագաւորը լսելով Կիւրոսի գալը խռովեցաւ, քանզի ամրոցներ կը շինէր հակառակ դաշանց։ Իսկոյն պատգամաւոր եկաւ թագաւորին, թէ Կիւրոս կու գայ զօրօք, եւ ոչ այլ ինչ խնդրէ ի քէն՝ բայց ըստ նախկին դաշանց տալ զօրս եւ արծաթ։ Հասկցաւ թագաւորը Կիւրոսի գալստեան նպատակը, եւ իսկ եւ իսկ կրտսեր որդին Սաւասպ հանդերձ կանամբք եւ մանկտւով եւ գանձուն ղրկեց լեռները, եւ ինք կ'աճապարէր զօրքը կանչել՝ մինչ գուժկան հասաւ, թէ կանայք եւ մանկտին անկան գերի, քանզի Քրիսանտաս զօրապետ Կիւրոսի գաղտնի ճամբով բռնած էր լերանց ճամբան։ Վարանեցաւ թագաւորը, եւ խոյս տալով հազիւ կարաց ամրանալ բլուր մի, զոր Կիւրոս վաղ հասնելով պաշարեց եւ պատգամ ղրկեց թագաւորին. «Ի՞նչ է, ասէ, միտքդ. մնալով անդ մեռնիլ ի սովոյ, թէ իջնել եւ կռուել ընդ մեզ ի գիւղի»։ «Միտքս կռուել չէ», ասէ թագաւորն։ Նորէն եկաւ պատգամաւորը, թէ «Ընդէր ուրեմն չես իջներ»։ «Կ'իջնեմ, ասէ թագաւորն, բայց ո՞վ լիցի դատաւոր ի մէջ մեր»։ «Զով որ դիք կու տան», պատասխանեց Կիւրոս։ Իջաւ թագաւորը, մինչ Կիւրոս կը կենար բակ առեալ ի զօրաց։ Այն միջոցին դարձաւ յուղեգնացութենէ երէց որդի թագաւո-

րին Տիգրան, որ որպէս ասացաք՝ ուսակից լեալ էր ժամանակաւ Կիւրոսի, և տեսնելով հայրը և մայրը և զկին իւր բռնուած՝ լացաւ։ «Ի դէպ ժամու հասար, ասէ ցնա Կիւրոս. լուր ուրեմն հօրդ դատը»։ Կիւրոս կոչեց Պարսից և Մարաց զօրավարներն որ առ իւր էին և Հայոց մեծամեծներէն՝ զորս մօտ գտնուեցան, նաև կանանայն թոյլ տուաւ լինել ունկնդիր։

Կիւրոս հարցուց նախ Թագաւորին, թէ ինչ պատճառաւ գրժեց ուխտին ընդ Մարաց, նաև պատերազմի պատրաստութիւն կը տեսնէր։ «Դու խոստացար, ասէ, հաւուն իմում Աժդահակայ՝ լինել նմա օգնական նիզակակից զօրօք և արծաթով ի հարկի և ամրութիւններ չշինել. բայց սոցա հակառակը գործեցիր»։ «Այո, ասէ Թագաւորն, քանզի ազատութեան ցանկացայ, և լաւ համարիմ ազատութիւն թողուլ որդւոցս»։ «Բարւոք է, ասէ Կիւրոս, ազատութեան համար կռուել. բայց մղէ, սաս, եթէ դաշնակիցներէդ մին գրժէր ուխտին և ձեռք իյնար, զինչ առնէիր նմա»։ «Զճշմարիտն ասելով՝ կը հանէի զնա իշխանութենէն, ասէ Թագաւորն. ինչ որ ունէր կ'առնուի, և եթէ ընդդէմ դառնայր՝ կը սպաննէի»։ Երբ զայս լսեց Տիգրան՝ հանեց խոյրը գլխէն և փողփողեալ վերջաւորները քակեց նետեց, և կանայք կու լային, կը ճչէին, որպէս թէ կորեաւ Թագաւորը, կորեան և ինքեանք։ Կիւրոս հրամայեց լռել, և դառնալով առ Թագաւորն ասէ. «Որովհետև այս են իրաւունք քո, կը հարցանեմ. ինչպէս արժան է մեզ վարիլ ընդ քեզ»։ Թագաւորը լռեց, և որդին Տիգրան անճապարելով խօսեցաւ երկար։ «Որովհետև զարժանն խնդրես, ասէ, ով Կիւրէ, ես խրատ տամ քեզ ներել հօրս որ արգահատելի է, զի առ սէր ազատութեան արար. բայց փոխանակ մեծ եւս ազատութեան՝ գտաւ ինչ որ չէր յուսար. ահա կայ ի ձեռս քո. ուստի եթէ կրկին թողուս նմա զազատութիւնն, ո՞չ ապաքէն երկիցս բարեկամ արասցես զնա քեզ»։ Կիւրոս որ խնդայր ի միտս իւր, զի կատարեցաւ ինչ որ խոստացած էր Կիաքսարայ—կրկին քան զառաջինն բարեկամ առնել զՀայս՝ ասէ. «Բարւոք է, միւսանգամ հաստատենք բարեկամութիւնը, բայց ինչ օգնութիւն պիտի տաք մեզ զօրաց և արծաթոյ»։ «Ցուցնեմ քեզ, ասէ Թագաւորն, բոլոր զօրութիւնս և գանձս, և առ՝ որչափ ինչ պատշաճ կը գտնես առնուլ»։ Կիւրոս ասէ. «Ո՞րչափ զօրք ունիք և ո՞րչափ արծաթ»։ «Ութ հազար հեծեալ և չորս բիւր հետևակ», ասէ Թագաւորն. իսկ արծաթ, հանդերձ այնու զոր եթող հայր իմ՝ աւելի է քան երեք հազար տաղանդ»։ Կիւրոս առաջիկայ պատերազմին համար բաւական համարեցաւ զօրաց կէսն առնուլ. «Քանզի միւս կէսն, ասէ, պէտոյ է ձեզ Կորդուաց համար, ընդ որս միշտ ի կռուի էք»։ Իսկ

արծաթոյ հարիւր տաղանդ միայն խնդրեց. հարիւր տաղանդ եւս փոխ վասն իւր, հատուցանելոյ պայմանաւ: «Մի այդպէս խօսիր, ով Կիւրէ, ասէ Թագաւորն, ապա թէ ոչ չտաս ինձ համարձակութիւն. գիտցիր որ բոլորը քո են»: «Իսկ որպէս զի կինդ առնուս, ինչ կու տաս», ասէ Կիւրոս ընդ խաղ: «Որչափ տալ կարող եմ», ասէ Թագաւորն: «Հապա մանկտւո՞յդ համար», կրկնեց Կիւրոս: «Դարձեալ որչափ կարող եմ», ասէ Թագաւորն: «Ուրեմն, ասէ Կիւրոս, բոլոր ստացուածոցդ կրկինը տալու ես»: Յետոյ դառնալով առ Տիգրան՝ «Եւ դու, ասէ, ով Տիգրան, ինչ փրկանք կու տաս կնոջդ համար»: Տիգրան որ նորոգ ամուսնացեալ էր և մեծ գութ ունէր առ կինն՝ ասէ. «Զանձն իմ գլխովին տամ, եթէ հարկ լիցի, առ ազատել կինս յաղախնութենէ»: «Դու Տիգրան, ասէ Կիւրոս, առ կինդ. ես չեմ համարիք զնա գերի, զի դու մենէ ես. դու եւս, ով Թագաւոր, առ կինդ և մանկտիդ, փրկանք չեմ պահանջեր վասն նոցա»: Կիւրոս հրաւիրեց զամենեսին յընթրիս, և յետ ընթրեացն ասէ. «Գնացէք իւրաքանչիւր յիւր տեղի». և մեկնեցան Թագաւորը և բոլոր ընտանիքը դեսպակօք: «Մինչ կ'երթային, ասէ Քսենոփոն, ոմն կը գովէր Կիւրոսի իմաստութիւնը, այլ ոմն՝ ժուժկալութիւնը, ոմանք եւս գեղեցկութիւնը և հասակին վայելչութիւնը: Տիգրան հարցուց կնոջը. «Քեզ եւս գեղեցիկ թուեցա՞ւ Կիւրոս»: «Ես չնայեցայ ընդ նա», ասէ կինն: «Հապա ընդ ո՞ նայեցար», ասէ Տիգրան: «Ընդ այն, ասէ կինն, որ ասաց թէ զանձն իմ գլխովին տամ, եթէ հարկ է, զի մի լինիցի կինս իմ աղախին»:

Ի վաղիւն Թագաւորն ընծաներ ղրկեց Կիւրոսի և զօրավարներուն. պատրաստեց նաև զօրքը և արծաթը: Կիւրոս հարցուց թէ ո՞վ պիտի երթար զօրավար Հայոց գնդին, Թագաւո՞րը թէ որդին. և որոշուեցաւ Տիգրան, որ չը կամէր բաժնուիլ ի Կիւրոսէ: Կիւրոս և Տիգրան ընկեր ընկեր հեծելովք Մարաց և Հայոց ելին շրջել ընդ երկիրն, և յարմար տեղ կը փնտռէին վասն պահակի, քանզի Տիգրան առաջարկած էր Կիւրոսի՝ բերդ շինել և յանձնել մար կամ պարսիկ պահանորդաց յերաշխաւորութիւն: Կիւրոս տեսնելով Հայոց շատ տեղերն անմշակ և ամայի՝ հարցուց պատճառը: «Կը տեսնե՞ս այս լեռներն, ասէ Տիգրան. Կորդուացիք կը բնակին հոն, և ժամանակ ժամանակ իջնելով կը կողոպտեն մեր թշուառ գիւղացիներն. այս պատճառաւ այն կողմերը թողուած են ամայի»: Կիւրոս խորհեցաւ այն լեռներուն ամուր կողմը շինել պահակն ի մէջ Հայոց և Կորդուաց, իբր երաշխաւորութիւն Հայոց կողմանէ, միանգամայն իբրև պատուար ընդդէմ յելուզակութեան Կորդուաց: Հետեւեալ օրը երբ Տիգրան եկաւ չորս հազար հեծելով և բիւր մի աղեղնաւորօք և նոյն-

չափ քիրտատուորօք՝ Կիւրոս յայտնեց նմա զիւր խորհուրդը, ըստ որ հաճեցան Հայք։ Կիւրոսի և Տիգրանայ առաջին գործն եղաւ սաստկութեամբ յարձակել ի վերայ Կորդուաց, որ չկրցան երկար դիմանալ։ Կիւրոս բռնելով Կորդուաց գլխաւորներէն զոմանս՝ համոզեց զնոսա, թէ օգուտ լինելոց էր վասն Կորդուաց և Հայոց՝ պահակ և բերդապահ զօրք ունենալ հոն Մարաց և Պարսից։ «Դուք, ասէ Կիւրոս, աղքատ էք և յերկուղածութեամբ կ'ապրիք, քանզի մշակելի երկիր և հողագործութիւն չունիք. ահա Հայոց դաշտերն բաց են առաջի ձեր. գացէք, պարապեցէք մշակութեան. և դուք, Հայք, փոխանակ այոր՝ արածեցէք ձեր հօտերն յարօտս Կորդուաց»։ Զայս լսելով երկոքին կողմանք՝ գովեցին. «Այսպէս միայն, ասէին, մարթի լինել հաստատ խաղաղութիւն»։ Պատանդ առեալ իրարու, և ի մէջ երկոցունց կնքեցան դաշինք ազատութեան և ամուսնութեան, մշակութեան և ճարակի, և փոխադարձ օգնութեան՝ եթէ վտանգ հասնէր միում ի կողմանց։ «Յարդ կայ, ասէ Քսենոփոն, այն ուխտը որ եղև յանժամ ի մէջ Հայոց և Կորդուաց»։ Երբ ամենայն ինչ այսպէս յարդարեցաւ՝ Տիգրան իմացուց հօրը, և իսկոյն եկան հիւսունք և գաղթականք ի Հայոց, և շինեցաւ պահակը։

Յետ ոչ բազում աւուրց մեկնեցաւ Կիւրոս հանդերձ իւրայովքն և հայկական զօրօք։ Յուղարկաւոր կ'երթային թագաւորը, նաև դըշխոյն Հայոց և դստերք և կրտսեր որդին և օրիորդք թագաւորազունք և բազումք յերևելեաց հանդերձ զօրուն, մինչև հրաժարել ի միմեանց։ Բայց Տիգրան մնաց առ Կիւրոսի, և էր նիզակակից նմա յամենայն պատերազմունս նորա։ Յառման Բաբելոնի յանուանէ յիշէ առ Քսենոփոնեայ՝ Տիգրան զօրավար այրուձիոյն Հայոց, և Եմբաս հետևակազօրուն։

Գ. Այս պատմութիւնը բոլոր պարագայիւք իբր պատմական չի կրնար առնուիլ. բայց թէ չէ առանց ամենևին պատմական հիման՝ առ այս բաւական ապացոյց են խիտ առ խիտ պատմական աննարկութիւնք, հեղինակին մերձաւորութիւնը ժամանակաւ,—քանզի Քսենոփոն իբր ութսուն ամօք միայն յետոյ է քան զԿիւրոս,—հրաշալեաց մուտ չունալը պատմութեան մէջ և մանաւանդ միաբանութիւնն ընդ Հրէից գրոց. զորօրինակ, թէ խնամութեամբ և ոչ պատերազմաւ անցաւ Մարաց տէրութիւնն ի Պարսս, թէ եղաւ ուրիշ թագաւոր ի մէջ Աժդահակայ և Կիւրոսի, թէ Կիւրոս էր գլխաւոր գործիք յառման Բաբելոնի, թէ քաղաքն առնուեցաւ դարձմամբ գետոյն, և թէ այն պատերազմին մէջ գործակից էին Մարաց ուրիշ հնազանդեալ ազգեր, յանուանէ Հայք։ Այս ամենայն պատմական դէպքեր են, զորս Քսենոփոն կը յիշէ միաբան ընդ Հրէից գրոց։

**10.** Մարգարէից մատեանք, յորս ինչպէս տեսանք կ'ակնարկուի Բաբելոնի անկումն ի ձեռն Մարաց կամ արիական ազգաց՝ չեն ցուցներ թէ ինչ էր այս անկման պատճառը։ Եհովա տա ի խնդրել զվրէժ ժողովրդեան իւրոյ Իսրայէլի ի Բաբելացւոց՝ յարոյց ընդդէմ նոցա զՄարս։ Երեմիա Ծ. և ԾԱ. գլուխներուն մէջ յիշելով Բաբելոնի անկումը՝ ստէպ կը կրկնէ վրէժխնդրութիւն բառը.— «Ճակատեցարուք շուրջ զԲաբելոնիւ, զի վրէժխնդրութիւն յԱստուծոյ է. խնդրեցէք վրէժս ի դմանէ. որպէս արարն՝ արարէք դմա»։ «Այսպէս ասէ Տէր զօրութեանց Աստուած Իսրայէլի. Ահաւասիկ ես խնդրեցից վրէժ յարքայէն Բաբելացւոց և յերկրէ նորա, որպէս խնդրեցի վրէժ յարքայէն Ասորեստանեայց»։ «Կազմեցէք աղեղունս, լցէք ըզկապարճս, զի զարթոյց Տէր զոգի թագաւորացն Մարաց, զի բարկութիւն նորա ի վերայ Բաբելոնի, և ջնջեսցէ զնա, զի վրէժխնդրութիւն Տեառն է, վրէժխնդրութիւն տաճարի նորա»։ Եհովա, իբրև բացարձակ տէր, դատաւոր և վրէժխնդիր, ինչպէս պատժեց իւր ժողովուրդն ի ձեռն Բաբելացւոց՝ նոյնպէս կը պատժէ զԲաբելացիս ի ձեռն Մարաց։ Մարգարէ մը, իբրև պաշտօնեայ Եհովայի՝ քան զայս ուրիշ պատճառ չէր կրնար տալ դիպաց։

**11.** Բայց ըստ Հերոդոտոսի և ըստ Քսենոփոնի՝ Մարաց պատերազմին առիթ տուաւ դաշնակցութիւն մը, որ եղաւ ի մէջ Լիւդացւոց և Բաբելացւոց ընդդէմ Մարաց։ Մինչ Նաբուգոդոնոսոր սեմական ազգաց միութիւնն ի գլուխ կը հանէր, թագաւորութիւններ ջնջելով, քաղաքներ աւերելով և ազգեր խառնելով՝ հնդեւրոպական ազգաց մէջ այս միութիւնը կը կատարուէր դաշնակցութեամբ և խնամութեամբ։ Ըստ Քսենոփոնի՝ յառաջ քան զԿիաքսար Բ. պաշտպանողական և յարձակողական դաշինք կար ի մէջ Մարաց մէկ կողմանէ, Պարսից և Հայոց՝ միւս կողմանէ։ Բարեկամական դաշնադրութիւն մը ըստ Հերոդոտոսի (տես. էջ 51), հաստատուեցաւ ի մէջ Կիաքսարայ և Լիւդացւոց։ Խնամութեան գալով՝ Աժդահակ իւր դուստրը տուաւ Պարսից իշխանին Կամբիւսեայ, Ալիադդէս արքայ Լիւդացւոց զդուստր իւր զԱրիենիս՝ (Հերոդ. Ա.) Աժդահակայ, և Տիգրան զքոյր իւր Տիգրանուհի՝ Աժդահակայ։ Թէպէտ այս վերջին երկու խնամութիւնք, մանաւանդ վերջինը, կատարեալ պատմական ստուգութիւն չունին՝ կը ցուցնեն սակայն, թէ այն ատենուան արիական կամ հնդեւրոպական ազգաց մէջ խնամութիւնը սովորական էր։ Լիւդացիք եղան ըստ Հերոդոտոսի առաջին՝ որ խորհեցան միացնել բոլոր հնդեւրոպական ճիւղն, ինչպէս Բաբելացիք միացուցած էին արամէականը։ Առ ի գլուխ հանել զայս գործ՝ հարկ էր նախ խորտակել Մարաց զօրութիւնը, և

այս պատճառաւ շահեցան զԲաբելացիս և զԵգիպտոս։ Ըստ Քսենո-փոնի՝ Բաբելացիք գրգռեցին զՄարս։ Կիաքսար տեսնելով մեծ զօ-րութիւն յարուցեալ յիւր վերայ՝ սկսաւ պատրաստել զդէմ ունել, ուստի և կանչեց զալ Պարսից զօրօք զիւր քեռորդին զԿիւրոս, ո-րում և յանձնեց սպարապետութիւնը։ Այսպէս ըստ Ցունաց։

**12.** Հրէից մատեանք յաղագս Բաբելոնի յանուանէ չեն յիշեր զԿիւրոս, կու տան սակայն մակաբերել, թէ Կիւրոս միջամուխ և գըլ-խաւոր էր ի կատարման այնր գործոյ։ Եհովա, ըստ Եսայեայ, բռնե-լով զձեռանէ Կիւրոսի՝ կը հնազանդեցնէ նմա ազգերը. լեռները կը հարթուէին, պղնձէ դըռունք կը խորտակին, քաղաքներ կը բացուէին, թյլովքն հանդերձ.—«Այսպէս ասէ Տէր Աստուած օծելոյն իւր ցԿիւ-րոս. Կալայ զաջոյ ձեռանէ նորա՝ հնազանդեցուցանել առաջի նորա զազգս, և քաղաքք մի՛ փակեսցին։ Ես երթայց առաջի քո, զլերինս հարթեցից, զդրունս պղնձիս խորտակեցից, և զնիգս երկաթիս փըշ-րեցից. և տաց զքեզ զգանձս խաւարինս, և զաւանդս աներեւոյթս բացից քեզ» (Ես. ԽԵ. 1—3)։

Հրէից գիրքերն առանց յիշելոյ Մարաց տէրութեան անցնելն ի Պարսս, յետ անկման Բաբելոնի իսկ և իսկ յիշելով զԿիւրոս և նոր հարստութիւնը կոչելով յանուն Մարաց և Պարսից՝ կու տան մակաբերել թէ այս անցումը եղաւ խաղաղութեամբ, և թէ փոփո-խութիւնն այն՝ էր հարստութեան կամ տիրող ազգատոհմի փոփո-խութիւն, զորոյ մանաւոր պարագաները կ՚աւանդէ մեզ Քսենո-փոն, այսինքն թէ ինչպէս առ ի չգոյէ արու մանկան, իգական ճիւղին անցաւ տէրութիւնն, ի Կիւրոս պարսիկ, մար ի մօրէ։

Արդարև Եզր և Նէեմիա որ ժամանակակից են Պարսից՝ Մարք և Պարսք անունները միանգամայն չեն գործածեր. այլ ի գիրս Դա-նիէլի և Եսթերայ միայն, որ յետ անկման Պարսից տէրութեան գրուած են՝ կը գտնենք Պարսից տէրութիւնն այսպէս կոչուած. բայց որովհետև Եսթերայ գիրքն ըստ մասին պատմական աղբերէ մը առնուած կը թուի՝ կրնանք այն կրկին կոչումն իբրև հաստա-տութիւն համարել Քսենոփոնի պատմութեան զանցմանէ պետու-թեան Մարաց ի Պարսս։

Զիարդ և իցէ՝ տարակոյս չկայ, թէ յետ անկման Բաբելոնի Կիւ-րոս եղաւ միահեծան տէր բոլոր արևմտեան Ասիոյ, և քաղցէա-կան տիրապետութեան յաջորդեց մեղմ և արդար իշխանութիւն մը, ընդ որով բոլորովին անկեալ ազգեր անգամ առին գէթ ինքնօրէ-նութիւնը մը, ինչպէս յայտնի է Հրէից գերութեան դարձէն։ Կիւ-րոսի այս ազնուական գործը կը վարձատրէ Եսայեայ ԽԵ. գլուխը փառաւոր գովեստով մը նոյն իսկ Եհովայի բերնէն.—«Ես յարուցի

զնա—ասէ Եհովա—արդարութեամբ թագաւոր, և ամենայն ճանապարհք նորա ուղիղ են» (Ես. ԽԵ. 13)։ Բայց Կիւրոսի ազնուականութեանն աւելի անաչառ վկայ է, ըստ աւանդութեան Հերոդոտոսի՝ նոյն իսկ Պարսից ազգը, որ զԿիւրոս կ'անուանէր հայր, զԿամբիւս՝ բռնակալ, զԴարեհ՝ հարկահան։ Δαρεῖος μὲν κάπηλος, Καμβύσης δὲ δεσπότης, Κῦρος δὲ πατήρ (Հերոդոտ, Գ. 89)։

**13**. Ասիոյ հին աշխարհակալաց վարչութեան սկզբունքն էր՝ առնել հարկատու ազգերը, և եթէ կ'ապստամբէին՝ ջնջել։ Այսպէս արարին Ասորեստանցիք և յաջորդք նոցա Բաբելացիք Եղամայ, Մէջագետաց, Ասորւոց և Պաղեստինու ազգերուն։ Այս դրութիւնն արդարև տեղի կու տար սաստիկ ապստամբութեանց. բայց առ Կիւրոսիւ և առ յաջորդաւ նորա Կամբիւսեաւ (529—522), որ իւր թագաւորութեան գրեթէ բոլոր ժամանակն անցուց Եգիպտոս նուաճելու՝ դադրած էին ապստամբութեան ձայները։ Առ այս նպաստած կ'երևի ոչ միայն Կիւրոսի մեղմ և զգօն կառավարութիւնը, այլ և համբաւ զինուց նորա։ Արդարև յետ խորտակելոյ Կիւրոսի զարմանալի արագութեամբ երկու մեծ տէրութեանց, Լիւդացւոց և Բաբելացւոց զօրութիւնը՝ դժուարին էր գոնէ ժամանակ մը խլրտել մանր մանր ազգաց։ Կիւրոսի զինուց ազդեցութիւնը համառօտ բայց ազդու կը նկարագրէ Եսայեայ ԽԱ. գլուխը (համար 2, 3). «Զարհուրեցուցէ զթագաւորս, և տացէ հողոյ զսուրս նոցա, և իբրև զխիւ մերժեսցէ զնետս նոցա, և արասցէ զնոսա փախստականս, և անցցէ խաղաղութեամբ զճանապարհս ոտից իւրոց»։ Յետ Կամբիւսեայ առ Ծմերդիւ կորաւ Պարսից զօրութեան ահը, և սկսան ապստամբութիւնք, ուստի և Դարեհ Վշտասպեայ (522—486) փոխելով վարչութեան սկզբունքը՝ ինքնօրէն իշխանութիւններն արար նահանգ. վարչութեան կերպ մը, որուն հետևեցան յետոյ Հռոմայեցիք։ Այսպէս Դարեհ եղև գտակ սատրապական դրութեան, որ տևեց մինչև Աղեքսանդր մեծ։

**14**. Յասացելոց աստի մինչև ցարդ զՀայոց առ Ասորեստանեօք և Մարօք իբրև արդարև պատմութիւն՝ կը հետևի, թէ ի վերջ կոյս Ը. դարուն նախ քան զՔր. կամ առ Սենեքերիմաւ՝ Հայաստան ազատ երկիր էր, որ կը կոչուէր Արարատ ի Հրէից, և եթէ պարտ է հաւատալ բևեռագիրները կարդացողներուն՝ Ուրարդի կամ Արարդի՝ յԱսորեստանեայց. թէ այս երկրին մէջ կար բնիկ թագաւորութիւն մը, ի Հրէից Արարատեան թագաւորութիւն կոչուած, թէպէտ յայտնի չէ, թէ այս թագաւորութիւնը մեր Արարատեան նահանգը միայն կը պարունակէր թէ աւելի ընդարձակ մաս մը, և թէ թէպէտ այս թագաւորութեան յաջորդութիւնն ստուգիւ յայտնի

չէ, թէ ինչպէս էր ընդ Ասորեստանեայս՝ բռնական յայտնի է սակայն, թէ Արարատեան ազգն, իբրև մերձաւոր ծագմամբ, թերևս նաև կրօնիւք, Մարաց՝ էր բարեկամ նոցա, մինչև լինել մին ի նիզակակցաց Մարաց յառման Բաբելոնի։ Այսպէս այն ժամանակուան Ասիոյ ազօտ և շփոթ պատմութեան մէջ կը գտնենք մեր ազգային գոյութեան թել մը, որոյ ծայրը թէպէտ անտեսանելի է մեզ նախապատմական ժամանակին մէջ՝ յայտ գալով սակայն յԸ. դարուն՝ կու գայ մինչև նախ քան զՔր. 518, որ է թուական պատերազմին Դարեհի ընդ Հայս։

**15.** Առ Կիւրոսիւ տեսաք զՀայս իբրև առանձին թագաւորութիւն, միջամուխ յառման Բաբելոնի. անտի մինչև Դարեհ Վշտասպեայ (522—486) ստոյգ ինչ և ուրոյն յիշատակութիւն չունիմք զՀայոց։

Խորենացին յետ դնելոյ զՏիգրան բարեկամ և գործակից Կիւրոսի և կարգելոյ զնա ի համարի մեծամեծ աշխարհակալաց, մինչև տալ նմա հնազանդեցուցանել զՅոյնս ընդ իւրով իշխանութեամբ զամս ոչ սակաւ, և օգնականութեամբ Կիւրոսի յինքն յափշտակել զտէրութիւնն Մարաց և Պարսից՝ կու տայ նմա, մինչև յԱղեքսանդր մեծ, յաջորդս ութ, որոց վերջինն, Վահէ՝ որպէս թէ հակառակելով Աղեքսանդրի կը մեռնի.—«Սա (Տիգրան) ամենեցունց թագաւորացն մերոց հարստագոյն (հզօր) և խոհեմագոյն... որ և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր. և զսահման մերոյ բնակութեանս ընդարձակեալ ի հինսն մեր հասուցանէ յեզերս ծայրից բնակութեանց» (Խոր. Ա. ԻԴ.)։ Եւ այլուր (Ա, Գլ. ԼԱ.) ասէ. «Բազումք անուանեալ Տիգրանք, մի է և միայնակ ի Հայկազանցս, որ զԱժդահակ սպան, և զտուն նորա ի գերութիւն վարեաց, և զԱնոյշ մայրն վիշապաց. *օժանդակ կամօք եւ յօժարութեամբ զԿիւրոս ունելով զիշխանութիւնն Մարաց եւ Պարսից յինքն յափշտակեաց*»: Թողլով առ այժմ զայս պատմութիւն, զորմէ պիտի խօսինք ի ստորև՝ գանք յիշել ինչ որ պատմի զՀայոց ի ժամանակակից աղբիւրս, որ համեմատութեամբ առատագոյն են ի Դարեհէ և այսր, քան անտի յառաջ։

**16.** Դարեհի նոր վարչական դրութիւնը, որ էր, որպէս ասացաք, պարսկական մեծ միապետութեան այլ և այլ մասերն, որ ինքնօրէն թագաւորութիւններ կամ իշխանութիւններ էին, սատրապութեանց փոխել, կամ ուրիշ բառերով, աւատականութիւնը (féodalité) ջնջելով՝ վերին իշխանութիւնը կեդրոնացուցանել ընդ իւրով ձեռամբ՝—ի սկզբան առիթ տուաւ ծանր դժգոհութեանց։ Նոր կարգադրութեան գլխաւոր դիմադարձներէն մին եղաւ Արմե-

նիա, յորոյ վերայ Դարեհ հնգիցս բանակ ղրկեց ընդ հրամանատարութեամբ երկուց զօրավարաց, յորոց մին էր արմէն ազգաւ։ Օբերդ 518-ին նախ քան զՔր. կը դնէ Դարեհի Հայոց դէմ պատերազմն, որ բաւական երկար յիշուած է ի Դարեհեան արձանագրութեան որ ի Պիսիդուն։

Պիսիդուն 556 մէդր բարձրութեամբ ապառաժ է ի հիւսիսոյ Քիրմանշահի, ի վերայ ճանապարհին որ ի մէջ Պաղտատու և Համատանայ (Եկբատան)։ Այս ապառաժին կողերուն վրայ քանդակուած է Դարեհեան արձանագրութիւնը, յորմէ լատիներէն թարգմանութիւն մը տուած է Ռօլինսոն (Լրգր. Ասիակ. Ընկ. հատ. Ժ), և Օբերդ նոր գաղղիերէն թարգմանութիւն մը (Հանդ. Հնաբ. Դեկտ. 1846)։ Ի վերջնոյ աստի առնումք հետևեալ կտորը. «Յետոյ, ասէ Դարեհ, յղեցի ի Հայս զծառայ իմ Դատարսէս հայ։ Խօսեցայ առ նա այսպէս. Գնա, զարկ զայս ապստամբ ժողովուրդ, որ ոչ հնազանդի ինձ։ Խաղաց գնաց Դատարսէս նուաճել զՀայս։ Ապստամբք կռուեցան ընդ նմա։ Արամազդ շնորհեց ինձ զիւր օգնութիւն. զօրք իմ սպանին զբազումս ի բանակէ թշնամւոյն։ Երկրորդ անգամ յարձակեցան ապստամբք ի վերայ Դատարսեսի. Արամազդ շնորհեց ինձ զիւր օգնութիւն, և զօրքս սաստկութեամբ զարկաւ ապստամբաց բանակը։ Ապստամբք երրորդ անգամ յարձակեցան ի վերայ Դատարսեսի. Արամազդ շնորհեց ինձ զիւր օգնութիւն, և զօրք իմ դարձեալ սպանին զբազումս ի զօրաց թշնամւոյն։ Յետ այնորիկ Դատարսէս սպասեց ինձ՝ մինչև չոքայ ի Մարս»։

«Այս երեքին ճակատք, որ չէին երեք յաղթութիւնք, ասէ Կիյլմէն, չկրցան նուաճել զՀայս, քանզի հարկ եղև Դարեհի նոր զօրավար եւ նոր բանակ ղրկել ի վերայ նոցա. նա մանաւանդ թուի թէ Հայք վանեցին զՊարսս արտաքոյ սահմանաց իւրեանց յԱսորեստան, ուր սպասեց Դատարսէս նոր հրամանաց Դարեհի յետ պարտութեան իւրոյ. պարտութիւն արդարև ծանր, քանզի չև ևս նուաճեալ էր Մարաց ապստամբութիւնը»։

Հայոց վրայ Դարեհի երկրորդ արշաւանաց զօրավար էր Ոմիսէս։ «Ոմիսէս, ասէ արձանագիրն, էր ի ծառայից իմոց. յղեցի զնա ի Հայս և խօսեցայ առ նա այսպէս. Խաղա, գնա, ջնջէ այն ապստամբ զօրքը, որ ոչ հնազանդի ինձ։ Յետոյ Ոմիսէս գնաց նուաճել զՀայս։ Ապստամբք խաղացին ի վերայ Ոմիսէսի տալ ընդ նմա պատերազմ։ Ասորեստանի մէջ կայ երկիր մը... անուն. հոն եղաւ կռիւը։ Արամազդ շնորհեց ինձ զիւր օգնութիւն. զօրք իմ սպանին զբազումս ի զօրաց ապստամբաց։ Երկրորդ անգամ խաղացին թշնամիք ի վերայ Ոմիսեայ տալ ճակատ։ Ի Հայս գոյ տեղի ինչ անուանեալ Ան-

տեգարա (․՞)․ հոն եղաւ կռիւը։ Արամազդ շնորհեց ինձ զիւր օգնութիւն․ զօրք իմ սպանին զբազումս ի թշնամեաց։ Յետոյ Ոմիսէս սպառեց ինձ ի Հայս մինչև ցգալուստ իմ ի Մարս»։

**17.** Կ'երևի թէ Արարատեան թագաւորութիւնն վերջապէս չկրցաւ դիմանալ զօրութեան Դարեհի, որ անդր քան զլերինս Կորդուաց ի հիւսիս կոյս մինչև ի Կուր, և ի Մարաց մինչև ի Կապադովկիա միացնելով իբրև ուրոյն նահանգ՝ կոչեց Արմին։

**18.** Ոմանք Արմին կամ Արմենիա բառին այլևայլ մեկնութիւններ տուած են։ Խորենացին յԱրամայ կը հանէ Արմէն անունը (Խոր. Ա. ԺԲ.)։ Արդի հնաբաններէն ոմանք (տես էջ 5—6.)՝ յԱրմենակայ։ Բայց Արմին կամ Արմնիք անունն ըստ Պարսից (Խոր. Ա. ԺԲ.), յորմէ Արմենիայն ըստ Յունաց՝ առաջին անգամ կը գտնենք գործածուած յարձանագրութիւնս Դարեհի Վշտասպեայ, իբր 500-ին նախ քան զՔր.։ Յառաջ քան զԴարեհ՝ զՀայաստան Արմնիք կամ Արմենիա կոչուած չենք գտներ ուրեք։ Յետ Դարեհի այն երկրին համար սովորական եղաւ այս անունը, և այս է պատճառը որ յոյն պատմիչք որ յետ Դարեհի են, հնագոյնն անգամ ի նոցանէ Հերոդոտոս՝ Արմենիա բառը կը գործածեն, մինչ Սեմականք ոչ այլ անուն գիտէին մեր երկրին համար եթէ ոչ Արարատ։ Թէ ինչ կը նշանակեն այս անուանք, ինչպէս նաև Հայք անունն՝ առ այժմստոյգ ինչ ասել չէ մարթ․ սա միայն յայտնի է, թէ ինչպէս որ Արարատ Սեմականաց կողմէն տրուած անուն է, և Արմնին Հնդեւրոպականաց կամ յԱրեաց՝ նոյնպէս վերջին անունն Հայ բոլորովին ազգային է և ընտանի։

**19.** Բայց զինչ և իցէ նշանակութիւն Հայ բառին՝ ըստ մեզ անտարակուսելի է, թէ Հայք էին ազնուագոյնն ի ցեղից Արմենիոյ, որպէս և երկիր նոցա Արարատ, մինչև Սեմականաց Արարատաւ իմանալ շատ անգամ բոլոր Արմենիոյ երկիրը։ Պատմութեան հակառակ չենք խօսիր, եթէ ընդ Փարպեցւոյն կոչենք զԱրարատ «գլուխ աշխարհիս Հայոց», ոչ միայն վասն բնական դիրքն իբրև «միջոց աշխարհին», այլև վասն քաղաքական ազգեցութեանն․ քանզի հոն եղաւ միշտ նիստ թագաւորաց մերոց․ գրեթէ ամենայն երևելի դէպք պատմութեան մերոյ կը յիշեցնեն մեզ զԱրարատ․ հոն սկսաւ և անտի տարածեցաւ Քրիստոնէութիւնն, ընդ նմին և հայ դպրութիւն և քաղաքակրթութիւն ընդ բոլոր Արմենիա։ «Քանզի յԱյրարատեան գաւառին ի թագաւորանիստ կայեանսն բղխեցին Հայոց տաննն Թորգոմայ շնորհք քարոզութեան Աւետարանին պատուիրանացն Աստուծոյ» (Ագաթ․ ձէ.)։

Հին Արտրատեան թագաւորութիւնն ինկաւ առ Դարեհիւ,

բայց յիշատակ նորա մնաց, այնպէս որ յետ իբր երկերիւր և յի-սուն կամ երեք հարիւր ամաց՝ դարձեալ ի նմին նահանգի, առ Երասխաւ, սկսաւ Հայոց երկրորդ հարստութիւնն այն է Արշակունեաց, որպէս տեսցուք ի ստորև, ոչ առանց պահելոյ նոյն Արարատեան անունը (Բուզ. Գ. Ժ.)

**20**. Թէ Արմենիա առ Դարեհիւ եղաւ նահանգ Պարսից և այնպէս տևեց բաւեց մինչև Աղեքսանդր մեծ՝ յայտնի է յաջորդ ժամանակակից պատմութենէ։ Առ Քսերքսիւ յաջորդաւ Դարեհի (486), Հերոդոտոս ժամանակակից յանուանէ կը յիշէ զԱրմենիա ի կարգս հարկատու ազգաց տէրութեանն Պարսից։ Հերոդոտոս կը յիշէ զՀայս ի մետասաներորդ բաժնին, որ ձգէր ի Պակտիացւոց (ազգ ինչ սահմանակից Հնդկաց) մինչև ի Սեաւ ծով, և կու տար 400 տաղանդ արծաթոյ ի բովուց.—«Պակտիացիք, Հայք և սահմանակիցք նոցա մինչև Եւքսինոս (Սեաւ) ծով կու տան տաղանդս չորեքհարիւր» (Հերոդ. Գ. 92)։ Բայց ունիմք զնորին իսկ Դարեհի վկայութիւնը։ Յարձանագրութիւնս Պերսոպոլեայ, որ են Դարեհի և Քսերքսի՝ Հայք *Արմին* անուամբ կը յիշուին իբրև եօթներորդ նահանգ արևմտեան ի կարգս հարկատու ազգաց զանդիկ կրօնիւք։ (Լասէն. Ռիգդէլ, Իրան. առ Գաթըրճ. Տիեզ. պատմ. հտ. Ա. էջ 341 և 351)։

Յետ Դարեհի մինչև Աղեքսանդր մեծ կացին թագաւորք վեց Պարսից. Քսերքսէս (486—465), Արտաշէս երկայնաբազուկ (465—424), Դարեհ հարճորդի (423—404), Արտաշէս ուշեղ (404—358), Արտաշէս Ովքոս (358—337) և Դարեհ վերջին Կոդոմանոս (337—334)։ Բոլոր այս թագաւորաց ժամանակ Հայք կամ Արմէնք մնացին հաւատարիմ Պարսից, մանաւանդ, որպէս վկայէ Քսենոփոն ականատես՝ առ Դարեհիւ հարճորդւով և առ ուշեղն Արտաշիսիւ, յարևմտեան մասին Արմենիոյ։ Բայց կային և ազատ ցեղեր ի կողմանս Տայոց և Բասենոյ, նա մանաւանդ Կորդուաց, որ ապստամբ էին Պարսից թագաւորներէն, և երբ յարձակում կրէին՝ իսկոյն կ'ապաստանէին ի լերինս իւրեանց կանամբք և որդւովք և աղխիւք, և քարինս մեծամեծս գլորելով ի վերուստ՝ չտային թոյլ թշնամւոյն մերձենալ։ Ըստ պատմութեան պարսիկ առաջնորդին Յունաց բիւրուն՝ Պարսից թագաւորն անգամ մը հանած էր Կորդուաց վրայ իբր երկոտասան հազարէ կազմեալ բանակ, և ոչ ոք ի նոցանէ դարձաւ ողջ առ դժուարութեան երկրին։ Բայց այս ցեղերը մինչ խաղաղութեամբ էին ընդ սատրապին՝ զօրք անգամ կու տային։ Զիարդ և իցէ՝ Հայք ի Դարեհէ և այսր գրեթէ յամենայն պատերազմունս Պարսից կը յիշուին Արմէն անուամբ ընդ ձեռամբ պարսիկ զօրավարաց։ Ի պատերազմին Քսերքսի ընդդէմ Յունաց (483)՝ յիշին ի Հե-

բազմաճեալ ընդ այլ ազգս և Արմէնք, զինեալ զինուք ըստ Փռիւգացւոց, ընդ զօրավարութեամբ Արտաքմեայ, որ զԴարեհի Պշտասպեայ դուստրն ունէր կին» (Հերոդ. Է.)։ Ցապստամբութեան Կիւրոսի կրտսերոյ ընդդէմ ուշեղն Արտաշխսի (401)՝ Արմէնք, թէպէտ գրեցին Կապադովկացւոց որոց նախարարք էր Կիւրոս՝ մնացին հաւատարիմ Արտաշխսի, որպէս պատմէ Քսենոփոն (Արշաւ. Կիւր. Դպր. Դ. գլ. Դ.)։ Ի պատերազմին Դարեհի վերջնոյ ընդ Աղեքսանդրի կը յիշուին դարձեալ Արմէնք.—«Հայք քառասուն հազար հետևակաց յղեցին, յաւելին ի նոյնս և եօթն հազար հեծելոց» (Կ. Կուրտ. պատմ. Աղեքս. հտ. Ա. էջ 272. թրգմ. Հ. Ց. Գաթըրճ.)։ Այս ամենայն մեծաւ մասամբ ժամանակակից վկայութիւնք բաւական են ցուցանել, թէ Արմենիա էր նահանգ Պարսից ընդ իշխանութեամբ պարսիկ սատրապներու։ Առ Քսենոփոնիւ պարսկերէնը տիրող լեզուն եղած էր Արմենիայ ժողովրդոց։ Զօրավարք Յունաց բիւրուն ջրուոր կանանց հետ անգամ որոց հանդիպեցան ի յանցանել իւրեանց ընդ Արմենիա՝ խօսեցան պարսիկ թարգմանաւ։

**21.** Արմենիոյ սատրապք ընդհանրապէս էին ազգականք կամ խնամիք թագաւորաց Պարսից։ Առ Քսենոփոնիւ Արմենիոյ արևելեան մասին սատրապն էր Որոնդաս անուն ոմն, փեսայ ուշեղն Արտաշխսի, իսկ արևմտեան մասին՝ Տերիբազ, ի ցեղէն Հիդառնեայ, միոյն յեօթն նախարարաց, որոց նստուցեալ էր զԴարեհ ի գահ։ Տերիբազայ հետ դաշնագրութեան անգամ մտին զօրավարք բիւրուն Յունաց։ Մին ի զօրավարաց աստի էր Քսենոփոն, առաջնորդ վերջապահաց բիւրուն, որ և պատմէ զայսոսիկ։ Տերիբազայ էր առանձինն պալատ առ Եփրատաւ, և իշխանութիւն ըմպելոյ արծաթէ բաժակաւ. ունէր նա յատուկ հացարար, տակառապետ և այլ պաշտօնեայս. արտօնութիւնք որ թագաւորազանց յատուկ էին յայնժամ։

**22.** Հերոդոտոս և Քսենոփոն ժամանակակիցք, մանաւանդ վերջինն որ ականատես ևս էր՝ կը նկարագրեն Արմենիոյ ժողովուրդն իբրև խաղաղ և երկասէր. երկու փառաւոր յատկութիւնք որ և առ մեօք ճանչցուեցան Հայոց վրայ։ Պարտ է խոստովանել սակայն, թէ Արմենիոյ ժողովրդոց երկասիրութիւնն արուեստներու և ճեռագիտութեան մէջ չէր։ Մեր լեզուին բառերէն այսչափ միայն կրնանք հետևցնել, թէ առ Հայս ի վաղուց կային հասարակ արուեստք, որպիսի են շինողութիւն, դարբնութիւն, ոստայնանկութիւն, հացարարութիւն և այլ նոյնպիսիք, քանզի կը գտնուին հայերէն այս արուեստներու վերաբերեալ անթիւ հին և բնիկ արմատ բառեր։ Բայց լոկ բանասիրական դիտողութիւն մը բաւական չէ պատմութիւն մը հաստատել։

**23**. Արմենոյ ժողովրդոց երկասիրութիւնը մանաւանդ հովւութեան, մշակութեան և տուրևառի կողմանէ էր։ Հերոդոտոս յատկապէս *հովիւ* կ'անուանէ զՀայս. «Հայք հովիւք ի վերոյ քան զԱսորեստանեայս բնակին» (Հերոդ. Ա.)։ Քսենոփոն Արմենիոյ ժողովրդեան գետնափոր տուներուն մէջ տեսաւ հովիւ և երկրագործ ժողովրդեան մը բոլոր հարստութիւնը։ Ամէն տեսակ ընտանի անասուն ի խաշանց և յարջառոց, զորօրինակ այծ և ուլ, ոչխար և գառն, եզն և կով և որթ պահելու համար՝ մեծամեծ գոմեր կային այն գետնափորոց մէջ։ Հայք այս անասունները կը սնուցանէին դալար խոտով։ Կային նաև այն գետնափորներուն մէջ համբարանոցք լի ցորենով և գարւով և արմտեօք։ Եթէ բանասիրութիւնը կարէ օգնել մեզ յայսմիկ՝ «մշակ» բառին նայելով պիտի համարձակինք ասել, թէ Մշոյ ժողովուրդը մանաւանդ նշանաւոր էր յերկրագործութեան, մինչև հայերէն երկրագործը կոչել *մշակ*, որ մշեցի կը նշանակէ։

Եթէ Մշոյ ընդարձակ և գեղեցիկ դաշտն յարմար էր հողագործութեան՝ անասուն և մանաւանդ ձի բուծանելու յարմար էր Արմենիոյ արևմտեան մասն, երկիր ջրաւէտ, ճարակաշատ, ուր էր գաւառն Կարնոյ «արգաւանդաւհող և շատաջուր,» ըստ Խորենացւոյն, և ուր դաշտք ունէին «զթանձրութիւն խոտոց» և բազմացուցանէին «զանասուն պաճարս, մեծահասակս, քաջամարմինս... համակեալս ի գիրութեան» (Խոր. Գ. ԾԹ.)։ Արդարև Արմենիոյ այն մասին ձիերն, գէթ յայնժամ, ընտիր էին քան զՊարսից և զՄարաց ձիս. հոն կը դարմանուէին և անկէ կ'երթային Պարսից թագաւորին ձիերն ընդ խնամով սատրապին, որ և տարին 20,000 մտրակ երիվար կը ղրկէր թագաւորին ի պաշտօն Միհր աստուծոյն։ Թերևս այս սրբազան նուիրին շնորհն էր, որ Արմենիոյ այն մասին սատրապն ունէր արտօնութիւն ձի հեծցնելու թագաւորն, երբ առաջիկայ կը գտնուէր։ Արմենիոյ այս մասին ժողովրդոց առևտրոյ յատուկ ճիւղ լեալ թուի ի վաղուց ձի և ջորի տանել երևելի վաճառաշահ քաղաքներ։ Եզեկիէլ, իբր 600-ին նախ քան զՔր., յողբսն որ ի վերայ Տիւրոսի՝ ի թիւս վաճառական ազգաց թուի ակնարկել զՀայս յասելն. «Եւ ի տանէ Թորգոմայ ձիովք և ջորւովք լցին զվաճառս քո» (Եզեկ. Իէ. 14)։

**24**. Այսպէս մեծաւ մասամբ հովւութեամբ և մշակութեամբ պարապեալ ժողովուրդ մը հարկաւ ամէն տեսակ առատութիւն կը վայելէր։ Յոյնք յետ եօթնօրեայ ճանապարհորդութեան ընդ ափափայս Կորդուաց գրեթէ նօթի՝ հիացան, յիմարեցան, երբ հասնելով ի Հայս՝ գտան ամբաւ առատութիւն ուտելեաց և ըմպե-

լեաց. Հաց ի ցորենոյ և ի գարւոյ. միս ամեն տեսակ անասնոց, գառին, ուլու, որթու, խոզի և հաւուց. ըմպելիս՝ ընտիր և զօրաւոր գարւոյ գինի, զոր երկայն և բարակ եղեգամբ ծծելով կ'ըմպէին: Յոյնք շատ տեղ գիւղերու մէջ գտան նաև հին և անուշահոտ գինի, տեսակ տեսակ իւղեր, ինչպէս խոզի ճարպ, կնճիթ, ի դառն նշոյ և ի բևեկնոյ մզեալ իւղեր, նաև իւղս անուշունս վասն օծանելեաց: Եթէ ճշմարիտ է այս նկարագիր Քսենոփոնի (որ իբրև ականատես կը խօսի ի գիրսն որ կոչի Արշաւանք Կիւրոսի և Նահանջ Յունաց բիւրուն, Դ. դպրութիւն, Գլ. 1—6)՝ չենք տարակոյս, թէ եթէ ոչ յառաջ՝ գէթ յերկերիւրամեայ միջոցին իշխանութեան Պարսից՝ էր «գաւառ ոսկի անդորրութեան և մշակութեան Հայոց աշխարհին» (Հ. Յ. Գթրճ. Տիեզ. պատմ. Հտ. Ա. էջ 343):

**25.** Այսպիսի և այսչափ բերովք առատ երկիր մը, մեծամեծ ջրոյ ճանապարհօք յարևմուտս, ի հարաւ և յարևելս, որպիսի էին Տիգրիս, Եփրատ և Երասխ՝ չկարէր մնալ առանց տուրևառիկ փոփոխման ընդ երևելի վաճառաշահ երկիրս, որպիսի էին Փիւնիկէ, Բաբելոն և Մարաստան, յորոց պաշարեալ էր Արմենիա: Հայոց վաճառականութեան Եփրատաւ ի Բաբելոն վկայէ Հերոդոտոս: Նաւք Հայոց, որ ըստ նոյն պատմագրի կ'երթային ընդ Եփրատ ի Բաբելոն՝ էին այլ և այլ մեծութեամբ. յիւրաքանչիւր նաւի կային մի կամ աւելի էշեան: Հայք կը շինէին այս նաւերը ծառի կոճղներէ բոլորակ, և կը պատէին մորթով: Այս նաւերուն մեծերը կը տանէին մինչև 1,000 տաղանդ բեռ: Հայ նաւավարք յետ հասնելոյ ի Բաբելոն, թափելով (պարպելով) զբեռինսն՝ նաւերուն փայտը և յարդը կը վաճառէին, և մորթերը բառնալով էշերուն վրայ՝ կը տանէին ցամաքաւ յերկիր իւրեանց, քանզի գետոյն սրընթացութեան աղագաւ դէպ ի վեր նաւարկել անհնար էր: «Նաւք նոցա որ երթան ընդ գետ անդր ի Բաբելոն՝ բոլոր բոլորակք և ի մաշկէ են, զորս Հայքն հովիւք որ ի վերոյ քան զԱսորեստանեայս բնակեալ են՝ յօրինեալ կազմեն ի ծառոցն կտրելոց և պատեն մորթովք . . . ոչ յետին կողմն նաւին յայտնի և առաջին կողմն սուր, այլ մանաւանդ ի կերպարանս վահանի է բոլորակ շուրջանակի: . . . Այսց նաւուց և մեծամեծք գոն և մանունք. ամենևին իսկ մեծամեծքն տանին բեռն իբրև հազար տաղանդ. իւրաքանչիւր նաւ ի նաւացն ունի յինքեան էշ մի. որ մեծամեծքն են՝ աւելի ևս: Իբրև ի Բաբելոն նաւավարք հասանիցեն և զբեռնն թափիցեն՝ զփայտն և զյարդն ամենայն տան գնոց, և զմորթն հանեալ յէշսն՝ վարեալ տանին ի կողմանս Հայոց աշխարհին, քանզի ի վեր կոյս գետոյն չմարթի նաւարկել վասն ուժգնութեանն, և յայն սակս իսկ ոչ

ի փայտից այլ՝ ի մորթոյ նաւքն գործին» (Հերոդոտ. Ա. Թարգմ. Հ. Յ. Գաթըրճ.)։

Ինչպէս Կորդուացիք վարձկանութեամբ՝ նոյնպէս Հայք վաճառականութեամբ, ինչպէս կ'երևի, Կուր գետով ընդ ծովն Կասպից և ընդ Ովքոս կ'երթային ստէպ ի Հնդիկս։ Ըստ Քսենոփոնի, երբ Կիւրոս կամեցաւ պատգամաւոր զրկել ի Հնդիկս՝ ի Կորդուաց և ի Հայոց միանգամայն խնդրեց առաջնորդ։ «Ով Հայաստանեայք, և դուք, Քաղդէացիք (Կորդուք), ասէ Կիւրոս, տացէք ցիս, եթէ առաքիցեմ ես զոմն յիմոց տանէ առ արքայն Հնդկաց, առաքիցէք և ի ձերոց այսր առաջնորդս ի ճանապարհին։ . . . Ի վաղիւ անդր առաքէր Կիւրոս զպատգամաւորն. իսկ Թագաւորն Հայոց և Քաղդէացիքն յղէին ընդ նմա՝ զորս բաւական իսկ համարէին գործակիցս լինել և զպատշաճն զԿիւրոսէ խօսել» (Քսեն. Կր. Կիւր. Թրգմ. Հ. Ց. Գաթրճ. էջ 169, 171)։

**26**. Արդէն յիշեցինք (էջ 69) թէ ինչպէս Քսենոփոն, մին ի զօրավարաց Յունաց բիւրուն, որ եկած էին յօգնութիւն կրտսերոյն Կիւրոսի յաջողելու՝ գրեց այն արշաւանաց և Յունաց դարձին պատմութիւնք, ուր կը գտնուին ակնարկութիւնք զանազան կենաց ժողովրդոց Արմենիոյ այնը ժամանակի։ Յերթալն ի պատերազմ ընդ Կիւրոսի՝ սոսկ միայն կը յիշէ Քսենոփոն, թէ հասնելով յափունս Եփրատայ գտան անթիւ գիւղեր լի ցորենով և գինւով, և յետ մնալոյ այն կողմերն երեք օր՝ առատ պաշարով մեկնեցան։ Ի դարձին իւրեանց զկնի պարտութեանն և մահուան Կիւրոսի, յետ անհնարին վտանգաց և տառապանաց, զորս կրեցին ի Պարսից՝ որոշեցաւ երթալ ընդ Հայս։ Յոյնք ունէին առաջնորդս ճանապարհի և թարգման պարսիկ ի բնակաց երկրին։ Բայց հարկ էր անցնել ընդ լերինս Կորդուաց, անց արդարև դժուարին և վտանգաւոր։ Կորդուաց գիւղերն էին լերանց հովիտներուն մէջ, ընդ որս էր ճանապարհն։ Կորդուացիք սովոր էին ի մերձենալ թշնամւոյ թողուլ զշէնս իւրեանց և ելանել լերանց գլուխները, քանզի գիտէին «յանդգնագոյնս արշաւել ընդ խորտաքորտս և ընդ վիմուտ տեղիս», որպէս ասէ Խորենացին զՄոկաց (Խոր. Գ. ԾԵ.), որ էին գրեթէ համացեղք ընդ Կորդուաց։ Կորդուացիք գիտէին նաև մեծ դիւրութեամբ քարեր տեղալ, և զի աղեղնաւոր էին կորովի՝ կը գործածէին աղեղունս և նետս անհեթեթ մեծութեամբ։ Նետերուն երկայնութիւնն էր իբր երկու կանգուն, այնպէս որ Յոյնք սկսան այն նետերն իբրև տէգ գործածել։ Նոյնպէս վկայէ և Դիոդորոս Սիկեղացի (Դպր. ԺԴ.), թերևս առեալ ի Քսենոփոնէ։ Ի սկզբան Կորդուացիք մեծ վնաս տուին Յունաց լերանց գլուխներէն։ Ի Յունաց մեռան գլաջարդ և

նշանաւոր ոչ սակաւք, յորոց յանուանէ յիշէ Քսենոփոն զքաղն Կղէարքոս լակեդեմոնացի և զԿեփիսոդորոս և զԱմփիկրատէս աթենացիս, որ մեծ ցաւ տուին Յունաց: Այնուհետև հարկ եղև Յունաց, յառաջ քան զմերձենալն ի շէնս Կորդուաց՝ զօրաբաժին դրկելով կանխել բռնել բարձունքը: Այսպէս զօրն ապահովութեամբ կը բնակէր գիւղերն՝ ուր կը գտնէր առատ պաշար: Իսկ գինին, ասէ Քսենոփոն, այնչափ առատ էր, որ բռեալ գուբեր գտնուեցան լի այսու ըմպելեաւ: Յոյնք նաև շատ պղնձի անօթներ կամ զարդեր գտան ի տունս Կորդուաց: Յետ իբր չորեքհարիւր ամաց Ղուկուլլոս հռոմայեցին գտաւ նաև ոսկւոյ և արծաթոյ մեծ գանձ առ Կորդուացիս, իսկ ցորեան, եթէ պարտ է հաւատալ Պլուտարքոսի՝ իբր երեք միլիոն քոռ:

Յոյնք յետ եօթն օր ճանապարհորդելոյ ընդ Կորդուս անհնարին դժուարութեամբ՝ եկան ի գետ մի, որ զԿորդուս բաժանէր ի Հայոց: Բազմահմուտն Անուիլ կը համարի, թէ Քովբար էր այս գետը, Տիգրիսի ճիւղերէն մին, առ որով Եզեկիէլ տեսաւ Եհովայի փառքը: ԶՔովբար չէ պարտ շփոթել ընդ Քաբօրասայ կամ Քապուրայ Միջագետաց որ թափի յԵփրատ: Յունաց այս օթևանը շատ հեշտ թուեցաւ անցեալ տառապանաց յիշատակաւ, որ քաղցր քուն շնորհեց զօրուն: Բայց առաւօտուն փոխուեցաւ տեսիլը: Յայնկոյս գետոյն տեսնուեցան հեծեալք սպառազէն, որ կը թուէր թէ կամէին արգելուլ Յունաց անցքը: Ի վերոյ քան զայրուձին կար հետևակաց գունդ մը ի Հայոց և ի Խաղտեաց ճակատեալ ի պատերազմ: Խաղտեաց համար կը պատմուի, ասէ Քսենոփոն, թէ են ազատ և պատերազմող. զէնք նոցա են ասպարք մեծամեծք յուռեաց և գեղարդունք: Յոյնք զինուորական հնարիւք խաբելով թշնամին՝ անցան գետը քարուտ և ծանծաղ տեղէ մը: Թշնամիք, որ էին վարձկան զօրք Որոնդասայ սատրապին արևելեան Արմենիոյ, տեսնելով Յունաց յառաջապահներն յայնկոյս գետոյն՝ քաշուեցան:

Ի պատճառս ստէպ պատերազմաց ընդ Կորդուս՝ Հայոց գիւղերն իբր հինգ փարսախ հեռու էին գետէն: Առաջին գիւղն ուր եկան Յոյնք՝ էր մեծ, լի պաշարով: Սատրապն ունէր հոն պալատ, և տուներէն շատերն ունէին աշտարակ: Այս երկիրն էր արևմտեան Արմենիա ընդ իշխանութեամբ Տերիբազայ, որ էր բարեկամ թագաւորին: Թագաւորը ձի հեծցնող ի պաշտօնէ այս սատրապն էր: Տերիբազ սպայիւք ոմամբք եկն շտապաւ, կամէր խօսել թարգմանաւ: Կը խոստանար բարեկամութիւն ցուցնել Յունաց՝ եթէ Յոյնք հաճէին գիւղեր չայրել, այլ պարէնիւ միայն շատանալ: Յոյնք յանձն

տուին, և այնպէս կռեցաւ դաշն։ Այս Տերիբազ է, սատրապ արևմտեան Արմենիոյ՝ որում յանձնեց յետոյ Արտաշէս Պարսից նաւատորմիղն ի պատերազմին ընդդէմ Կիպրոսի (366), մինչ Որոնդաս, սատրապ արևելեան Արմենիոյ, փեսայ Թագաւորին՝ էր հրամանատար ցամաքային զօրուն։ Յոյնք իբր հնգետասան փարսախ երթալով յարևմուտս կոյս հիւսիսոյ՝ ամենայն ուրեք կը գտնէին գիւղեր լի պաշարօք, ուրեք ուրեք նաև պալատներ։ Բերոց ընտիրը կը գտնուէր այս գիւղերուն մէջ. պախրէ, ցորեան, գինի հին անուշահոտ, չամիչ, ընդեղէն ամեն տեսակ, ազգի ազգի իւղեր բազում յոյժ, զորս բնակիչք կը գործածէին փոխանակ ձիթոյ, զոր օրինակ հալած ճարպ խոզի, կնճիթ, ի դառն նշոյ և ի բեւեկնոյ մզեալ իւղեր, նաև նոյն տունկերէն հանուած ոգիներ։ Մինչ Յոյնք կը պատրաստուէին խաղալ յառաջ՝ Տերիբազու բանակէն պարսիկ մը պատմեց, թէ Տերիբազ կը խորհէր յարձակել ի վերայ Յունաց լերան մը կիրճը ընդ որ միայն էր անց։ Արդարև Տերիբազայ զօրքը փորձեցին արգելուլ Յունաց անցքը, բայց չկարացեալ զդէմ ունել յարձակման նոցա՝ փախան։ Իբր քսան երիվար, Տերիբազայ վրանը, արծաթի դահոյք և ստոմանք, նաև հացարարք և մատռուակք սատրապին անկան ի ձեռս Յունաց։ Թուի թէ ճանապարհն Յունաց էր ընդ Տարօն և ընդ Բարձր Հայս (Անգեղ տուն), ուր մօտ ի Կարին անցան Յոյնք զԵփրատ, քանզի ասէ Քսենոփոն, թէ չէին անտի հեռի ակունք Եփրատայ և թէ պատահեցան ջերմուկներու։ Աստի յառաջ դժուարին եղաւ չուն ի պատճառս յորդութեան ձեան։ Քիրիսոփոս իւր յառաջապահներովն ընդ երեկս հասնելով գիւղ մի՝ տեսաւ կանայս և աղջկունս, որ մօտաւոր աղբերէ մը ջուր կը տանէին։ Կանայք հարցանեն Յունաց թէ ո՛յք են։ Թագաւորին կողմէն ղրկուած զօրք են առ սատրապն, ասէ թարգմանն պարսկերէն։ Սատրապն չէ աստ, ասեն կանայք, այլ է աստի փարսախ մի հեռու։ Քիրիսոփոս ջրուոր կանանց հետ մտնելով գիւղը՝ գնաց առ աւանապետն, և զօրքը բանակեցան անդ։ Քսենոփոն վերջապահօք եկած էր յայլ գիւղ, իբր քսան ասպարիզօք հեռու Քիրիսոփոսի գիւղէն. Քսենոփոն ճաշեց այն իրիկուն ընդ աւանապետին և ընդ դստեր նորա, հարսն իննօրեայ, որոյ այրն գացած էր որսալ նապաստակ։ Տունք գետնին էին ընդարձակ գետնափորք, նեղ նեղ լուսամուտք։ Մարդիկ կ՚իջնէին սանդղով, անասունք՝ ընդ մուտս առ ի շեղ գործեալ, քանզի այն գետնափորներուն մէջ կը պահուէին իբրև ի գոմս այծք և ոչխարք և եզինք, նաև հաւք պէսպէս և խար անասնոց համար։ Կային և համբարք ցորենոյ, գարւոյ, ընդեղինաց և գինի ի գարւոյ թակոյկներու մէջ, և եղեգունք

այլ և այլ մեծութեամբ։ Երբ կը ծարաւէր ոք՝ այն եղեգանց մին առնելով ի բերան միով ծայրիւ և միւս ծայրը մխելով գինւոյն մէջ՝ կը խմէր ծծելով։ Այս ըմպելին սաստիկ է, ասէ Քսենոփոն, եթէ ըմպի անապակ, բայց սովորելոց ախորժելի է։ Քսենոփոն վարձ խոստացաւ աւանապետին՝ եթէ առաջնորդէր Յունաց մինչև սահմանագլուխը. հայրենասէր աւանապետն ուրիշ վարձ չխնդրեց բայց միայն զազատութիւն հայ գերեաց։ Ի վաղիւ անդր Քսենոփոն աւանապետին հետ գնաց գտնել զՔիրիսոփոս։ Ո՛ր գիւղ և կը հանդիպէր՝ կը գտնէր յոյն զինուորներն ի խնջոյս և յուրախութեան, և գրեթէ ամենայն ուրեք սեղանի վրայ գառն և ուլ, խոզենի և որթ և հաւ. իսկ հաց առատ ցորենոյ և գարւոյ։ Քիրիսոփոսի գիւղը գալով՝ գտին և զնա և զորս ընդ նմայն էին ի խրախութեան, և հայ պատանիս որ կը ծառայէին նոցա իւրեանց խուժ հանդերձիւ։ Քիրիսոփոս և Քսենոփոն հարցին զաւանապետն պարսիկ թարգմանաւ, թէ ինչ երկիր էին, և առին պատասխանի թէ ի Հայս։ Հարցին դարձեալ, թէ որո՛յ համար կը բուծանէին Հայք այնչափ ձի. պատասխան տրուեցաւ թէ թագաւորին համար ի սակ հարկի։ Քսենոփոն ընտրեց առաւ ձի մի ի ձիոց նուիրելոց արեգական, և յանձնեց աւանապետին զոհել. յետոյ առաւ մտրուկ մի վասն իւր, և մէն մի մտրուկ՝ վասն իւրաքանչիւր զօրավարի։ Յոյնք առին զաւանապետն ընդ իւրեանս իբրև առաջնորդ մինչև սահմանագլուխը, և թողին ընտանիքը բաց յորդւոյն, որ յանձնուեցաւ Եպիսթենայ Ամփիպոլսեցւոյ։ Քիրիսոփոս զճանապարհային կասկածելով զաւանապետէն, որպէս թէ անապատ տեղ կ'առաջնորդէր,—քանզի երեք օթևան գացին առանց հանդիպելու գիւղ մը,—զանեց զծերունին։ Ազնիւն Քսենոփոն չհաճեցաւ ընդ խստութիւն Քիրիսոփայ և յանդիմանեց զնա՝ և յիրաւի. քանզի ի խոր խոցեալ աւանապետին ընդ ապաշնորհ գնացս յոյն զօրավարին՝ փախաւ գիշերայն։ Բայց հայ պատանին, որդի աւանապետին, մնաց առ Եպիսթենայ, և էր նմա սիրելի և հաւատարիմ։



## Գ. ՄԱԿԵԴՈՆԱՑԻՔ.

*1. Մակեդոնիա մինչեւ Աղեքսանդր մեծ: 2. Արշաւանք յարեւելս. Պատճառք այս արշաւանաց: 3. Այլ պատճառք տկարութեան պարսկական պետութեան. քնութիւն եւ զեղխութիւն: 4. Մեծութիւն աշխարհակալութեան Աղեքսանդրի: 5. Աղեքսանդրի աշխարհակալութեան արդիւնքն առ յաջորդօք նորա. գիտութիւնք, յունարէն լեզուն: 6. Յաջորդք Աղեքսանդրի. Սելեւկեանք: 7. Արմենիա ի՞նչ օգուտ քաղեց յունական քաղաքակրթութենէ: 8: Հայոց նախնական ժամանակի պատմութեան վերջին շրջանը, յԱղեքսանդրէ մինչեւ Տիգրան մեծ: 9. Արմենիա առ Աղեքսանդրիւ եւ առ յաջորդօք նորա ըստ ո՛չ ժամանակակից պատմագրաց: 10. Արմենիա առ յաջորդօք Աղեքսանդրի ըստ ժամանակակից եւ գրեթէ ժամանակակից պատմագրաց. Արտաշատ: 11. Արշակունի ցեղին ծագումը: 12. Արշակունի բառին նշանակութիւնն ըստ արիական լեզուաց: 13. Արշակունիք՝ բնիկ թագաւորական ցեղ ըստ հնագոյն մատենագրաց մերոց: 14. Ազգականութիւն ի մէջ Արշակունեաց եւ Պարթեւաց:*

**1.** Ի հիւսիսոյ Յունաց անդր քան զԹեսաղիա, ի մէջ Թրակիոյ և Իլիւրիկիոյ, էր լեռնայինն Մակեդոնիա, թագաւորութիւն փոքր և աննշան, մինչև կոչել բարբարոս ի Յունաց։ Արդարև այնպիսի էր Մակեդոնիա դէթ յառաջ քան զՓիլիպպոս Բ. թագաւոր նորա (360 նախ քան զՔր.), առ որով մեծացաւ և զօրացաւ Մակեդոնիա, մինչև նուաճել նախ ազդեցութեամբ և ապա զինու զՅունաստան, զլաղթօղն ահագին զօրութեան աշխարհակալաց Պարսից։ Փիլիպպոս մեռաւ 336-ին, մինչ կը պատրաստուէր յարձակել յարևելս, գործ մը զոր կատարեց որդի և յաջորդ Փիլիպպոսի, Աղեքսանդր, յերկոտասանամեայ կարճ ժամանակի թագաւորութեան իւրոյ (336—323)։

**2.** Աղեքսանդրի արշաւանքն յարևելս չէր յանկարծադէպ. իբր 70 ամօք յառաջ փորձեց զայս Ագեսիղաւոս թագաւոր Սպարտացւոց, որ անցնելով յԱսիա՝ եհար զՊարսս և յառաջացաւ մինչև ի Կապադովկիա (395). դաշնակցութիւն մը որ կազմուեցաւ պարսկական ոսկւով ի Յունաստան ընդդէմ Սպարտացւոց՝ դարձոյց զԱգեսիղաւոս ի հայրենիս իւր, և զերծաւ Պարսից պետութիւնը մօտալուտ վտանգէն։ Յունաց արշաւանքն յարևելս հետևանք էր սխալ

աշխարհակալութեան յաջորդաց Կիւրոսի։ Մարաթոն կոչուած պատերազմներով Պարսք երկիցս փորձեցին նուաճել Յունաստան, Դարեհ 492—490, և Քսերքսէս՝ 485—479. բայց յաղթութիւնք Յունաց առ Մարաթոնիւ և առ Սաղամինաւ ցուցին, թէ զօրութիւնը ոչ թէ բազմութեան է, այլ քաջութեան և առաքինութեան։ Յոյնք ճանչցան թէ այն ահագին զօրութեան մէջ յորում էր Պարսից տկարութիւնը։ Նիւթական վայրագ զօրութիւն առանց այն բարոյական ուժոյ, զոր տան զինուորական խրատ և կրթութիւն։ Զկնի ճակատուն առ Պղատէա, Քսերքսէս չգտաւ զօրավար փոխանակ Մարտոնիոսի, որ ինկած էր այն ճակատուն մէջ, մինչ առ Յոյնս իւրաքանչիւր բանակ ունէր Միլտիադէսի և Թեմիստոկղէսի պէս գոնէ տասն զօրավար։ Նահանջ բիւրուն ևս աւելի ճանչցուց Յունաց Պարսից տկարութիւնը։

3. Բայց պարսկական պետութեան տկարութիւնը՝ մանաւանդ բռնութիւնը և զեղխութիւնն էր, որ զօրութիւն և մեծութիւն կը կործանէին։ Սատրապներուն բռնութիւնն, ասէ Հերոդոտոս, այնչափ էր որ քաղքաքաւք անգամ տժգոհ էին։ Հաւատարմութիւնը, եթէ կար, ոչ թէ ի սիրոյ էր այլ ի ստրկութենէ և յապիկարութենէ։ Բռնութիւնը կը տիրէր նաև ի բանակին։ Հերոդոտոս կը պատմէ, թէ Քսերքսէս յետ հանդէս առնելոյ զօրաց իւրոց, երբ պիտի խաղար ի վերայ Յունաց՝ ասէ ցԴեմարատոս յոյն, որ էր ի բանակին Պարսից. «Կարծեմ Յոյնք պիտի չկրնան զգէմ ունել այսչափ բազմութեան»։—«Այո, ասէ Դեմարատոս, եթէ չփախչին զօրքդ»։ «Փախչին, ասէ Քսերքսէս. խարազան կայ»։—«Յոյնք քան զայն ահաւորն ունին, ասէ Դեմարատոս,—զօրէնս, որ կը պատուիրէ յաղթել կամ մեռնիլ. աւելի կ'երկնչին Յոյնք յօրինաց քան քու հպատակներդ ի քէն, և պիտի ընդդիմանան քեզ, եթէ ոչ բոլոր Յոյնք՝ գէթ Սպարտացիք, թէև հազարք միայն մնան»։ Քսերքսէս ծիծաղեցաւ։ Թերևս կեղծիք է այս խօսակցութիւնը. բայց Թերմոպիւղեայ անցքը և բոլոր պատերազմին ելքը ցուցին թէ այսպէս էր։ Զեղխութեան գալով՝ այս մոլութիւնը ոչ միայն յարքունիս, այլ և ի բանակին կը տիրէր։ Երբ Յոյնք, յետ ճակատուն առ Պղատէաւէն Պարսից բանակը՝ գտան, ասէ Հերոդոտոս, ոսկեթել վրաններ, պահոյս և անօթս պէսպէս յոսկւոյ և յարծաթոյ. կաթսաներն անգամ յարծաթոյ էին։ Գրեթէ ամեն զինուոր ունէր ապարանջան ոսկի ի բազկին, և մանեակ ի պարանոցին։ Քսերքսէս ի փախչելն՝ զօրավարին իւրում Մարտոնիոսի թողած էր կարասին, որ էին անօթք ոսկեղէնք և արծաթեղէնք և օթոցք ի պէսպէս գունոց։ Պաւսանիաս սպարտացի, զօրավար Յունաց, որոյ ձեռք ինկաւ Պար-

ուց բանակը, տեսնելով այնչափ մեծութիւն՝ հրամայեց հացարարաց և խոհակերաց Մարտոնիոսի պատրաստել սեղան, ինչպէս կը պատրաստէին Մարտոնիոսի։ Հրամանը կատարուեցաւ։ Պաւսանիաս մտաւ վրանը, և տեսնելով ոսկեղէն և արծաթեղէն գահոյս, սեղաններ նոյնպէս յոսկւոյ և յարծաթոյ մեծաշուք զարդարուած՝ զարմացաւ. ապա զքօսանաց վասն հրամայեց սպասաւորաց իւրոց այլ սեղան պատրաստել ըստ սարադու Լակեդեմոնացւոց։ Որովհետև մեծ էր այս երկու սեղաններուն տարբերութիւնը՝ ծիծաղեցաւ Պաւսանիաս, և կոչել տալով Յունաց զօրավարներն ասէ. «Ո՛վ Յոյնք, կոչեցի զձեզ որպէս զի տեսնէք զանմտութիւն պարսիկ զօրավարին, որ ունելով այսպիսի սեղան՝ եկաւ յափշտակել զմերն որ այսպէս աղօրմելի է»։

4. Այսպիսի սէրութեան մը վրայ գնաց Աղեքսանդր 35,000 զօրօք։ Աւելորդ է երկար խօսիլ զարագ աշխարհակալութենէն Աղեքսանդրի, որ 334-ին նախ քան զՔր. անցաւ Հելլեսպոնտոս և 324-ին արդէն տէր էր ծանօթ աշխարհի մեծ մասին, այն է յԱդրիական ծովէ մինչև ի ծովն Հնդկաց, և ի Սկիւթացւոց մինչև յԵթովպիա։ Աղեքսանդրի աշխարհակալութեան նիւթական մեծութեան վրայ այսչափ. բայց այն աշխարհակալութիւնն ունի նաև բարոյական կողմ մը, զորմէ երկայնագոյն խօսել հարկ է, որպէս զի գիտնանք թէ որպիսի քաղաքակրթութեան հետ կը մտնենք ի հաղորդութիւն։ Աղեքսանդրի աշխարհակալութեան բարոյական մեծութիւնը կը կայանայ յայնմ, որ այս աշխարհակալութիւնն, ընդհանրապէս խօսելով փոխեց Ասիոյ կեանքը։ Փոխանակ ասիական զեղծ դանդաղութեան մտաւ յունական պինդ ժրութիւն, գիտնական և առևտրական։ Աղեքսանդրի աշխարհակալութիւնն արար զոր ինչ առնէ քաղաքակիրթ ազգ մը յետ մնացած երկրի մը մէջ, ինչպէս առ մեօք Անգղիա ի Հնդիկս և Գաղղիա յԱլճէրի։ Ըստ բանից մատենագրաց որ Աղեքսանդրի պատմութիւնը գրեցին՝ այս աշխարհակալին մեծագոյն նպատակն էր հաստատել յԱսիա, երկրագնտոյս այն գեղեցիկ բայց դժբախտ մասին մէջ, ընկերական և քաղաքական կազմութիւն մը բոլորովին նոր, այսինքն փոխանակ այն բռնի և նիւթական կեղծ միութեան, զոր լաւագոյն զմաւ ածել չկրցան հին աշխարհակալք Ասիոյ՝ հաստատել ճշմարիտ բարոյական միութիւն յունական դաստիարակութեամբ և դիւրացնելով ընդհանուր հաղորդակցութեան և վաճառականութեան միջոցները։ Անհաւատալի չէ այսպիսի գաղափարներ ունենալ աշխարհակալի մը, որ առ ոտս Արիստոտելի կրթուած էր։ Բայց թէ Աղեքսանդր ունէր արդարև վերոյիշեալ նպատակը՝ չունիմք առ այս այլ պատմական երաշխաւո-

րութիւն բաց ի վկայութեննէն հռաւոր պատմագրի մը, Դիոդորոսի Սիկեղացւոյ, որ կը պատմէ թէ Աղեքսանդր ի գրի հարած էր այն նպատակը մանր մասամբք, և թէ այն գիրը գտնուեցաւ Աղեքսանդրի առանձին թուղթերուն մէջ։ Բայց Աղեքսանդր ունէր թէ չունէր այնպիսի նպատակ՝ չէ փոյթ. արդեամբ այնպէս եղաւ անդէն առ առաջին յաջորդօք նորա։

**5.** Աղեքսանդրի յաջորդաց պատմութեան վրայ երկար և ուրոյն տեղեկութիւն տալ աւելորդ է. պարտ է գիտել սակայն, թէ Աղեքսանդրի աշխարհակալութեամբ սկսուած յունական քաղաքակրթութիւնը չմարեցաւ մահուամբ նորա, այլ նախ հեթանոսական և ապա քրիստոնէական ձևով մինչև Արաբացւոց արշաւանքն առ յաջորդօք Մահոմետի տևեց, ունենալով ինքեան ոսոխ, բայց ոչ յաղթող, արևելեան քաղաքակրթութիւն մը առ Պարթևօք և առ Սասանեամբք. քաղաքակրթութիւն մը՝ բազմօք նման Ասորեստանցւոցն և Պարսից որոց դուստր էր։ Առ Պտղոմեաւ (323—285) և առ Սելևկոսիւ (312—279), առաջին թագաւորօք Եգիպտոսի և Ասորւոց, գիտութիւնք և արուեստք, ինչպէս նաև վաճառականութիւնք ծաղկած էին ըստ յունական ոճոյ այս թագաւորաց երկիրներուն մէջ։ Աղեքսանդրիա իբրև երկրորդ Աթէնք բարձր է գլուխ կը պարծէր։ Վկայ է մուսէոնն Աղեքսանդրիոյ հաստատեալ ի Պտղոմեայ։ Գրեթէ ամէն ծանօթ գիտութիւն—փիլիսոփայութիւն, ուսողութիւն, բնագիտութիւն, բժշկականութիւն, բանասիրութիւն, դպրութիւն—ունէր անդ զիւր առանձին սրահ։ Կար մատենադարան մի մեծ ի մուսէոնի և ուրիշ մը ի Սերապէոն, այլ շինուած հանդերձ մեհենիւ, նուիրեալ ուսման և գիտութեան։ Պերգամոյ, փոքր թագաւորութիւն ի Փոքրն Ասիա, 283-ին նախ քան զՔր. սկսաւ մրցիլ, իբրև միւս ևս Աթէնք՝ ընդ Աղեքսանդրիոյ ոչ միայն գիտութեամբ և մատենադարանիւն, այլ և փոխանակ պապիրոսի գիւտիւ մագաղաթին, յոյր ձեռն պահուեցան և հասին առ մեզ այնչափ ընտիր մատեանք։

Յոյն լեզուն տարածուելով ընդ բոլոր Ասիա և Եգիպտոս՝ շուտով եղև պաշտօնական լեզու դաստիարակութեան, վարչութեան և առևտրոյ։ Ըստ վկայութեան Ցերոնիմոսի, բաց ի Գաղատիոյ չկար երկիր յԱսիա ուր չխօսուէր յունարէն։ Այս ազդեցութիւնն արդարև տկար էր ի Մարս և ի Պարսկաստան, ուր կրօնական աւանդութիւնք հակառակ էին հելլենականութեան. բայց ոչ այնպէս ի Հայս, ի Պարթևս և ի Բակտրիա։ Ըստ Պլուտարքոսի, որ իբր կէս դար յետոյ է՝ Հայոց թագաւոր մը Արտաւազդ անուն կը գրէր ողբերգութիւններ Սոփոկղի լեզուաւ։ Այս Արտաւազդ է որդի Տիգ-

բանալ մեծի, զոր մեր Խորենացին կը նկարագրէ իբրև «զիմաստութենէ անփոյթ», «զիշավայրիս և զխոզս արածողս», «ծառայ և սորուկ որովայնիս», (Խոր. Բ. ԻԲ.)։ Արդարև զարմանալի է տեսնել Պարթև թագաւորաց դրամներուն վրայ ոչ միայն յունարէն լեզուն, այլ և «յունասէր» վերտառը։ Յունարէնի ազդեցութեամբ ծնաւ ասորերէն մը (Syriaque), իբր մատենագրական լեզու, և մեր Ե. դարու ոսկեղինիկ մատենագրութեան առաջին ոճոյն քերականական կանոնաւորութիւնը ո՛չ ապաքէն այն մատենագիրներուն յունարէնի զգօն հետևողութեան արդիւնքն էր։ Տաս կ'երկայնէինք և կը շեղինք մեր նպատակէն՝ եթէ յիշենք արուեստից, առևտրոյ, աշխարհավարութեան, գեղապանութեան, շինութեան, գաղթականութեան վերաբերեալ ինչ որ եղաւ առ յաջորդօք Աղեքսանդրի յԱսիա։

6. Յետ մահուն Աղեքսանդրի մին ի զօրավարաց նորա Պերդիկկաս, որում ի մեռանելն տուած էր Աղեքսանդր զիւր մատանին՝ եղաւ խնամակալ տէրութեան, մինչ միւս զօրավարք այլևայլ նահանգներ բռնելով կը տիրէին անոնց անուան թագաւորի։ Զկնի մահուն Պերդիկկայ, միւս զօրավարք յետ երկար պատերազմաց բաժնեցին տէրութիւնը, և Ասիա ինկաւ բաժին Սելևկոսի (312—279)։ Այս բաժնին մէջ էր Արմենիա, որ այնուհետև համարեցաւ իբրև գաւառ ընդ իշխանութեամբ Սելևկեանց, թագաւորաց Ասորւոց։

Սելևկոսի յաջորդաց գլխաւորներն են—Անտիոքոս Ա. Սոտեր (279—261), Անտիոքոս Բ. Թէոս (261—246), Սելևկոս Բ. Կալլինիկոս (246—225), Անտիոքոս Գ. Մեծ (225—186), Սելևկոս Դ. Փիլոպատոր (186—174), Անտիոքոս Դ. Եպիփան (174—164), Անտիոքոս Ե. Եւպատոր (164—162), Դեմետրիոս Սոտեր (162—150), Դեմետրիոս Նիկատոր (146—125), և այլք որ չեն նշանաւոր։

7. Արդ տեսնենք, թէ ինչ օգուտ քաղեց Արմենիա յունական քաղաքակրթութենէն, որ մտաւ յԱսիա աշխարհակալութեամբ Աղեքսանդրի։ Արմենիա յառաջ քան զքրիստոնէութիւնն գրեթէ ոչինչ օգտեցաւ յունական քաղաքակրթութենէն։ Առ տկարութեան նոր տէրանց իւրոց Սելևկեանց՝ շուտով զօրացաւ հան հին արքելեան տարրը։ ՅԱրմենիա յարեաւ արդարև նոր Արարատեան թագաւորութիւն մը, ի մոխրոյ հին Արարատեան թագաւորութեան, Արշակունեաց թագաւորութիւն անուամբ, մեծ քան զհին Արարատեան, բայց բոլորովին ասիական։

8. Հայոց նախնական ժամանակի պատմութիւնն ինչպէս էր մութ և ընդհատ առ Ասորեստանեօք և Մարօք՝ նոյնպէս է յայսուհետև, այսինքն յԱղեքսանդրէ մինչև Տիգրան մեծ։ Այս ժամանակին հա-

ձայր եւս չունինք ժամանակաւոր աղբիւր․ արդարեւ կը գտնենք ինչ ինչ յիշեալ է հին պատմագիրս զՀայոց առ Աղեքսանդրիւ և առ յաջորդօք նորա, մանաւանդ առ Սելեւկեանբք, բայց այս պատմագիրներէն շատք ժամանակակից չեն, և երբեմն հակառակ միմեանց։ Այսպէս ինչ որ Դիոդորոս Սիկիլացի, Պլուտարքոս, Կուրտիոս, Յուստինոս և Ապպիանոս կը յիշեն՝ երբ երեք հարիւր և աւելի ամօք յառաջ են քան զնոսա, ուստի և չեն կրնար իբրև ստոյգ ընդունուիլ։ Պոլիբիոս միայն, իբրև արդարև ժամանակակից, արժանի է կատարեալ հաւատարմութեան, և յետ Պոլիբեայ Ստրաբոն՝ իբրև մօտաւոր ժամանակաւ։ Յետ յուշ առնելոյ զայսոսիկ իբրև կարևոր՝ տեսնենք թէ ինչ կը յիշեն զՀայոց հին պատմիչք ոչ ժամանակակիցք և ժամանակակիցք։

Զ. Աղեքսանդր մեծ անձամբ չեկաւ իւր նոր տէրութեան հիւսիսային կողմը, ո՛չ ի Կապադովկիա և ոչ յԱրմենիա, կամ վասն զի ժամանակ չունեցաւ, և կամ, որ աւելի հաւանական է՝ վասն զի ընդհանուր վաճառականութեան համար, որ էր մին ի գլխաւոր նպատակաց նորա՝ յարմարագոյն գտանեցաւ զբաղել հարաւային կողմը։ Հիւսիսային նահանգներն, ինչպէս Կապադովկիա և Հայք՝ յանձնուեցան պարսիկ սատրապներու, որ հաւատարիմ գտնուած էին Աղեքսանդրի։ Այսպէս Արմենիա յանձնուեցաւ, ըստ Դիոդորոսի և Կուրտեայ՝ Միհրան անուն ումեմն (330—323), սատրապի Լիւդիոյ որ անձնատուր եղած էր Աղեքսանդրի։

Յետ մահուն Աղեքսանդրի Պերդիկկաս եդ կուսակալ ի վերայ Արմենիոյ, ըստ Յուստինոսի՝ Փրատափեռնես, ըստ Դիոդորոսի՝ Նէոպտողեմէոս անուն զոմն, այր խիստ և ամբարտաւան, որ և մերժեցաւ ի Հայոց, որոց գլխաւոր էր Արդուարդ զոր թագաւոր կ'անուանէ Դիոդորոս։ Եւմենէս որ առած էր Կապադովկիոյ կուսակալութիւնը (323), վանելով զԱրիարաթ Բ. թագաւոր Կապադովկիոյ, հրամանաւ Պերդիկկայ երթալով ի Հայս՝ հաւանեցոյց զԱրդուարդ միւսանգամ ընդունել զՆէոպտողեմէոս իբրև վերակացու Մակեդոնացւոց կողմէն, գէթ ի նշան հպատակութեան առ Մակեդոնացիս։ Բայց յետ սակաւուց Նէոպտողեմէոս գրգռեցաւ ի պատերազմ ընդդէմ Եւմենեայ և սպանաւ ի ճակատուն մենամարտութեամբ ի ձեռանէ նորին իսկ Եւմենեայ։ Արդուարդ ըստ Դիոդորոսի յետ մահուան Եւմենեայ հաստատեց զԱրիարաթ Գ. զորդի Արիարաթայ Բ-ի ապաւինելոյ ի Հայս յաթոռ թագաւորութեան հօր նորա։ Ըստ ոմանց (Չամչ. Պատմ. Հյ. Ա. էջ 130) Արդուարդայ յաջորդեց Հրանտ կամ Երուանդ։ Ըստ Չամչեանի Արդուարդայ և Երուանդի իշխանութեան ժամանակն է իբր 78 տարի, այն է մինչև 247

նախ քան զՔր.։ Եթէ հաստատուի այս պատմութիւնը՝ կը հետևի թէ արդէն իսկ առ առաջին Սելևկեան թագաւորօք, այն է իբր յամէ անտի 325 նախ քան զՔր. կար յԱրմենիա ընիկ իշխանութիւն կամ թագաւորութիւն մը. բայց այս պատմութիւնը, որպէս աստ-ցաւ՝ ստուգութեան կարօտ է։

**10.** Ստոյգ է սակայն թէ մեծին Անտիոքոսի վերջին տարիները (190—186) արդէն կը թագաւորէր, ըստ Պողիբիոսի ժամանակակից պատմագրի, Արմենիոյ մեծ մասին վրայ Արտաքսիաս, այսինքն Ար-տաշէս ոմն, և էր մին ի ստորագրողաց դաշին, որ Հռոմայեցւոց աջակցութեամբ կռեցաւ (180) ի մէջ թագաւորաց Փոքուն Ասիոյ— Եւմենեայ Բ-ի արքայի Պերգամոնայ. Պրուսիասայ արքայի Բիւ-թանիոյ և Արիարաթայ Ե-ի արքայի Կապադովկիոյ մէկ կողմանէ, և միւս կողմանէ Փառնակայ արքայի Պոնտոսի, հաւուն մեծին Միհրդատայ։ Պողիբիոս յետ ի մէջ բերելոյ յիշեալ դաշնագրութեան գլխաւոր կէտերն՝ ասէ. «Այս դաշնադրութեան միջամուխ էր (վե-րին) Ասիոյ թագաւորներէն Արտաշէս, որ կը թագաւորէր ի վերայ մեծագոյն մասին Արմենիոյ» (Պողիբ. գլր. ԻԶ.)։

ԶԱրտաշէս կը յիշէ նաև երևելի նոյն աշխարհագիրն Ստրաբոն, որ չէր հեռի ժամանակաւ ի նմին Արտաշիսէ։ Ըստ Ստրաբոնի՝ այս Արտաշիսի ժամանակ շինեցաւ Արտաշատ։ «Արտաշատ, ասէ Ստրա-բոն, կոչի երբեմն և Արտաշիսաշատ (Արդաքսիասատա), քանզի հիմնեցաւ ի ձեռն Աննիբաղայ վասն Արտաշիսի արքայի առ Երաս-խաւ. քաղաք մեծ և գեղեցիկ, որ և է սավորական նիստ թագա-ւորացն Հայոց, ի մուտս դաշտին Երասխայ։ Շինեցաւ ի թերակղզւոջ ուրեմն, զոր կազմէ արմուկն մի Երասխայ, որ և թանայ յերից կող-մանց զպարիսպ քաղաքին, մինչ չորրորդ կողմն քաղաքին որ է առ պարանոցաւ թերակղզւոյն՝ փակեալ է խրամով և պատուարաւ, թող զերկոսին ամրոցսն, որ չեն կարի հեռի ի քաղաքէն, տեղիք գանձուց Տիգրանայ և Արտաւազդայ» (Ստրաբ. գլր. ԺԱ. 6)։ Ասի թէ Ան-նիբաղ, որ յետ պարտութեան իւրոյ ի Հռոմայեցւոց ապաւինած էր առ Անտիոքոս մեծ՝ ի պարտել սորա ի Հռոմայեցւոց գնաց առ Ար-տաշէս ի Հայս։ Թէ արդարև Աննիբաղ գնաց առ Արտաշէս և թէ ըստ խրատու նորա շինեցաւ Արտաշատ՝ թողունք զայսոսիկ. ստոյգ է սակայն, թէ առ մեծաւ Տիգրանաւ, իբր 75 կամ 80 ամօք յետոյ քան զԱրտաշէս՝ կար Արտաշատ իբրև նշանաւոր քաղաք Մեծին Հայոց, որպէս յայտ է ի Բուզանդայ. «Խաղացուցին (զօրքն Շապ-հոյ) յԱրտաշատ քաղաքէ ինն հազար երդ Հրէայս, զոր ածեալն էր գերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ յերկրէն Պաղեստինացւոց» (Բուզ. Դ. ԾԵ.)։ Յետոյ յիշելով ուրիշ քաղաքաց հրէայ գերիները՝

կը յաւելու. «Մեծ արքային Տիգրան զամենայն զհրէութիւնն զայն բնակեցոյց ի քաղաքսն Հայոց յիւրում դարուն ժամանակին» (Անդ.)։

Ստրաբոն որ ծաղկեցաւ ի վերջ կոյս Ա. դարուն նախ քան զՔր. և ի սկզբան Ա. դարուն յետ Քրիստոսի, ուստի և է գրեթէ ժամանակակից Տիգրանայ մեծի՝ իբրև սերունդ վերոյիշեալ Արտաշիսի կը համարի զՏիգրան մեծ։ Ահա Ստրաբոնի խօսքը. «Այս երկրին (Արմենիոյ) վերջին համառօտ պատմութիւնն այս է ի ժամանակէ անտի Պարսից մինչև առ մեզ։ (Արմենիա) յետ լինելոյ ընդ իշխանութեամբ Պարսից և ապա Մակեդոնացւոց՝ հուսկ ուրեմն էանց ի ձեռս թագաւորաց Ասորւոց (Սելևկեանց)... բայց սա ուրեմն Արտաքսիաս (Արտաշէս) և Զարիադրիս (Զարեհ), (ընիկ) զօրավարք Անտիոքոսի մեծի, բաժանեցան ի մէջ իւրեանց զԱրմենիա և վարեցին զերկիրն ի սկզբան յանուն և հաւանութեամբ Անտիոքոսի. ապա տեսեալ զոտէր իւրեանց (զԱնտիոքոս) յաղթեալ ի Հռոմայեցւոց՝ փութացան անցանել ի կողմն Հռոմայեցւոց և լեալ ինքնագլուխ առին զանուն թագաւորի։ Տիգրան (մեծ), սերունդ Արտաքսիասայ, իբրև այնպիսի, կալաւ զբուն Արմենիա (զՄեծ Հայս), այսինքն զամենայն մասն երկրին, որ ձգի զաշխարհօքն Մարաց, Աղուանից և Վրաց մինչև ի Կողքիս և ի ծովեզերեայն Կապադովկիա։ Ի նմին ժամանակի Ծոփացին Արտանէս, սերունդ Զարիադրայ, ունէր զհարաւակողմն Արմենիոյ, մանաւանդ զմասնն յարևմտից հարաւոյ. այլ յետ սակաւ միոյ ընկեցաւ յաթոռոյն և սպանաւ ի Տիգրանայ, որ այսպէս մնաց միահեծան տէր բովանդակ երկրին» (Ստրաբ. դպր. ԺԱ. 15)։

Եթէ ըստ Ստրաբոնի (որ, որպէս ասացաք, ժամանակակից էր Տիգրանայ և Արտաւազդայ, ծննդեամբ Կապադովկացի, գրացի Հայոց և հմուտ իրաց արևմտեան Ասիոյ), Տիգրան մեծ Արշակունի էր սերունդ վերոյիշեալ Արտաշիսի և ի յաջորդաց նորա՝ կը հետևի թէ Արշակունի թագաւորաց ցեղն էր ընիկ Հայ, որ սկսելով առ մեծաւն Անտիոքաւ իբրև կուսակալութիւն ընդ իշխանութեամբ Սելևկեանց՝ եղաւ թագաւորութիւն, մինչև եհաս ի ծագ փառաւորութեան իւրոյ մեծաւ Տիգրանաւ, որով կ՚սկսի մեր պատմութեան պատմական ժամանակը։

**11.** Խորենացին բոլորովին տարբեր կը պատմէ Արշակունեաց ծագումը։ Ընդհանրապէս կը կարծուի, թէ Արշակունի կը նշանակէ արշակեան, այսինքն սերունդ Արշակայ առաջին թագաւորին Պարթևաց։ Բայց զթագաւորս Պարթևաց կամ զցեղ նոցա արշակունի կոչուած ոչ ուրեք գտանեմք, մանաւանդ զի բոլոր թագաւորք Պարթևաց Արշակայ սերունդքն չէին. քանզի թագաւորք Պարթևաց

ոչ թէ միշտ որդի ի հօրէ կ'առնուին թագաւորութիւնը, այլ ընտրանաւ։ Արշակ կոչումը, որ կը նշանակէ թագաւոր՝ բոլոր Պարթեւ թագաւորաց բուն անուններուն հետ կից կը գտնուի իբրեւ պատուանուն, ինչպէս Փարաւոն տիտղոսը՝ Եգիպտացւոց։ Այսպէս Պարթեւաց առաջին թագաւորը (որ, որպէս կարծի, կը կոչուէր Դարեհ, ի ցեղէն Դարեհի վերջնոյ Պարսից թագաւորին, որ յետ վերջին պարտութեան իւրոյ յԱղեքսանդրէ ապաւինած էր ի Բակտրիա, Բահլ ըստ Խորենացւոյն, Բ. Բ.) կը կոչուի Արշակ Ա, յաջորդ նորա Տրդատ՝ Արշակ Բ, յաջորդ սորա Արտաւան՝ Արշակ Գ, սորա յաջորդն Պրապատ՝ Արշակ Դ, յաջորդ սորա Փրաատ՝ Արշակ Ե, յաջորդ սորա Միհրդատ Ա՝ Արշակ Զ, որ է Արշակ մեծ Խորենացւոյն։

Առ Հայս միայն կը գտնենք թագաւորական ցեղ մը Արշակունի կոչուած։ Խորենացին այս արշակունի ցեղ կը համարի սերեալ ի Պարթեւաց, եւ Արշակունի անունը կը հանէ ո՛չ յԱրշակայ առաջնոյ, այլ յԱրշակայ Զ-է, որ է Միհրդատ Ա. (Արշակ Բ. կամ Արշակ մեծ ըստ Խորենացւոյն), որպէս թէ ի յիշատակ այս Արշակայ, որ իւր եղբայրը Վաղարշակ թագաւոր կացոյց Հայոց՝ Արշակունի կոչեցաւ Վաղարշակայ տոհմը.—«Յարքայէն Պարսից Արշակայ եւ Վաղարշակայ եղբօրէ նորա զոր մերոյ ազգիս թագաւորեցոյց, որ յետ նորա եղեն թագաւորք աշխարհիս մերոյ ի նորին սերմանէ, որդի ի հօրէ առնլով զտէրութիւնն՝ անուանեցան Արշակունիք յԱրշակայ» (Խոր. Բ. Ա.)։ Ըստ պատմութեան Խորենացւոյն Արշակ մեծ ապստամբելով Մակեդոնացիներէն կը թագաւորէ «*ի վերայ ամենայն արեւելից*», եւ սպանելով զԱնտիոքոս ի Նինուէ (․՞), կը հնազանդեցնէ «*զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ*». եւ անշարժ պահելու համար իւր թագաւորութիւնը՝ թագաւորութեան գրեթէ «կէսը» կու տայ իւր եղբօրը Վաղարշակայ, թագաւորեցնելով զնա ի վերայ Հայոց.—«Քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին, եւ սահմանս հաստանէ նմա զմասն ինչ յարեւմտեայ Ասորւոց եւ զՊաղեստին եւ զԱսիա եւ զամենայն Միջերկրեայս (Փոքր Ասիա) եւ զԹիտալիա (Թեսաղիա ․՞), ի ծովէն Պոնտոսի մինչեւ ի տեղին ուր Կաւկաս յարեւմտեանն յանգի ծով, եւ զԱտրպատական» (Խոր. Ա. Ը.)։ Վաղարշակ կը պատերազմի եւ կը յաղթէ Եգերացւոց, Պոնտոսի, Փռիւգիոյ, Կապադովկիոյ եւ Փոքուն Հայոց թագաւորներուն, եւ տեսնելով ի Հայս «*խառն ի խուռն զամենայն եւ վայրենի*»՝ բազում եւ մեծամեծ կարգաց վրայ կը յաւելու նաեւ սա մեծ բարերարութիւնն ազգին, որ Նինուէի դիւանէն Մարիբաս անուն գիտուն ասորւոյ մը ձեռօք բերել կու տայ «ստոյգ» պատմութիւն մը Հայոց։ Իսկ Վաղարշակայ թոռն Արտաշէս այնչափ կը զօրանայ, մինչեւ «*արքունիս իւր ի Պարսից աշխարհին շի-*

*նել եւ դրամ առանձին.զիւր պատկերն հարկանել եւ զԱրշական* (Պարթեւաց թագաւորը) *ընդ իւրով ձեռամբ կացուցանել թագաւոր Պարսից*»։ Արտաշէս զդուստր իւր զԱրտաշամա կու տայ կին «Միհրդատայ ումեմն Վրաց բդեշխի» (այն է Մեծն Միհրդատ, որ ի հաւուց անտի էր թագաւոր Պոնտոսի, ոչ Վրաց բդեշխ) և յանձնէ նմա հիւսիսային լերանց (Կովկասու) և Պոնտոս ծովուն կուսակալութիւնը (.՛)։ Անթիւ զօրօք կը խաղայ յարեւմուտս, կը բռնէ Լիւդացւոց թագաւորը Կրիսոս (!!!)․ ոչ միայն ասիական Յունաց, այլ և բուն Յունաստանի մեհեանները կողոպտելով՝ երևելի յոյն անդրիագործներէ յօրինեալ գից պատկերներ բերել կու տայ ի Հայս, և այսպէս յետ *դողացուցանելոյ բոլոր Յունաստան եւ արեւմուտք*՝ կ'սպաննուի իւր զօրքէն (Խոր. Բ. Գ—ԺԳ.)։

Այս պատմութիւնը, զոր Խորենացին վաւերական աղբիւրներէ, այն է ի Մար Իբասայ, իբրև ժամանակակից պատմագրէ, և Ափրիկանոսի ձեռամբ Եդեսիոյ և Սինոպայ դիւաններէն առնուած կը գնէ՝ մեծաւ մասամբ անհիմն և անտեղի է, և եթէ կայ ի նմա ինչ ինչ ճշմարիտ՝ կը վերաբերի Տիգրանայ և Միհրդատայ պատմութեան։ Ուստի Արշակունեաց ի Պարթևաց կամ ի Վաղարշակայ սերելուն վէպն գնելով այն պատմութեան քով, զոր Վաղարշակ բերել տուած է Նինուէի դիւաններէն՝ լուիցուք զոր ինչ բանասիրութիւն և ազգային աւանդութիւնն ասեն զարշակունի բառէն և ցեղէն։

**12.** Արշակունի բառին նշանակութիւնը գիտնալու համար պէտք չունինք Խորենացւոյն և այլոց վկայութեան։ Արիական լեզուաց ուսումը, կամ լաւ ևս ասել համեմատեալ բանասիրութիւնը (philologie comparée), որ մեր դարուն յատուկ է՝ բաւական է ճշդիւ տալ մեզ արշակունի բառին նշանակութիւնը։ Արշակունի կը նշանակէ «արքունի, թագաւորական», հայերէն *Արշակ* անունէն, որ զանդիկ կամ հին պարսկերէն լեզուին *Քշէրշէ* (Քսերքսէս) բառին կրճատեալը կամ աղաւաղեալն է, և կը նշանակէ արքայ, ինչպէս նաև Քշէրշէն սանսքրիդ լեզուին *Քշադրան* է։ Դիտողութեան արժանի է, որ Արշակ անունը թագաւորաց միայն կը տրուէր, այնպէս որ մեր պատմութեան մէջ ուրիշ մը Արշակ կոչուած չենք գտներ, մինչ Արտաւազդ, Արշաւիր, Արտաշէս, Տիգրան, Տիրան, որ թագաւորաց սովորական անուններ են՝ կոչուած են շատեր։ Հայք որոց պաշտօնական լեզուն, գէթ առ Պարսկօք, պարսկերէն էր՝ արիական բառով արշակունի կոչեցին հին Արարատեան թագաւորական ցեղը։

**13.** Զայս թուին ակնարկել հնագոյնք ի մատենագրաց մերոց, որ զԱրշակունիս գիտեն իբրև *բնիկ տեարս* երկրին։ Այսպէս ըստ Ագաթանգեղոսի՝ Տրդատ ի հրովարտակին որ առ նախարարս Հայոց՝

բոլոր հայ նախարարութիւնք և ազգը կ'ունենան բնիկ ձեռատունի և ձեռատուն, այսինքն սեպհականութիւն Արշակունեաց.—«Ամենայն նախարարք, մեծամեծք և գործակալք և շինականք, բնակք եւ ծեռատունկք եւ ծեռասունք մեր Արշակունեաց» (Ագաթ. ԺԲ.)։ Մանուէլ Մամիկոնեան սպարապետ Արշակայ վերջնոյ՝ ըստ Բուզանդայ ի մեռանելն կը խրատէր զորդի իւր զԱրտաշիր «հնազանդ կալ... և մեռանել՝ ի վերայ բնակ տերանց աշխարհիս, Արշակունեաց»։ Նոյն Մանուէլի ցաւ էր զի մեռանէր յանկողնի և ոչ ի պատերազմի ի վերայ հայրենեաց և բնիկ թագաւորին.—«Սկսաւ (Մանուէլ) լալ» ասէ Բուզանդ, և ասել, թէ Ես ի մանկութենէ համակ սնայ ի պատերազմունս, և ընդէր ոչ եհաս ինձ մեռանել ի պատերազմի... զի լաւ էր ինձ եթէ ի պատերազմի մեռեալ էի ի վերայ աշխարհի... և ի վերայ Արշակունեաց, բնակ տերանց աշխարհիս» (Բուզ. Ե. ԽԴ.)։

Թէ արշակունի ցեղն հին Արարատեան թագաւորական ցեղն էր՝ Հայոց պատմութեան շատ պարագաներէն յայտնի է։ Արշակունիք էին բուն տեարք Արարատեան նահանգին, իբրև սեպհական կալուածոյ այն ցեղին, և իբրև տեարք Արարատեան նահանգին, այն է իբրև սերունդք հին Արարատեան թագաւորաց՝ կը վայելէին բոլոր Հայոց վրայ թագաւորելու իրաւունքը, այնպէս որ Արարատեան նահանգը բնակիլ առանց գիտութեան թագաւորին՝ կը համարուէր նշան թագաւորութիւնը յափշտակելու։ Վարդան Մամիկոնեան սպարապետ Արշակայ որդւոյ Տիրանայ յամբաստանելն զԳնէլ՝ ասէ ցԱրշակ. «Ո՞չ գիտես, զի խորհեալ է Գնէլ սպանանել զքեզ, զի ինքն փոխանակ քո թագաւորեսցէ։ Ահա տես, արքայ, զնշան իրին, զի բնակեցաւ Գնէլ յԱյրարատ, ի կալուածս ձեր թագաւորաց» (Խոր. Գ. ԻԲ.)։ Միւս բոլոր նահանգները կամ նախարարութիւնները կը համարուէին իբրև ի վաղուց և յիրաւանց աւատ (fief) այս հին Արարատեան ցեղին։ Արշակունեաց կամ Արարատեան ցեղին այս աւատատիրութեան (suzeraineté) կամ թագաւորութեան իրաւունքն այնպէս հին և սեպհական էր, որ ուրիշ որ և իցէ ցեղէ թագաւոր ընդունելի չէր Հայոց. այնպէս որ ապստամբ նախարարք անգամ եթէ Արշակունի ցեղէն չէին՝ չհամարձակէին թագ կապել կամ թագաւորի տիտղոս առնուլ։ Երբ յետ մահուն Տրդատայ Սանատրուկ, որ Արշակունի էր, ապստամբելով թագաւորեց ի Փայտակարան՝ նաև Աղձնեաց բդեշխը Բակուր, մին ի չորից գահերէց իշխանաց թագաւորին, «զնոյն խորհեցաւ առնել» (այսինքն ապստամբել), ասէ Խորենացին, «թէպէտ ոչ թագաւորել, զի ոչ էր Արշակունի, այլ տիրագլուխ կամեցաւ լինել» (Խոր. Գ. Դ.)։ Հռոմայեցիք և Սասանեանք անգամ ստիպեալ էին յարգել Արշա-

կունեաց այս խրատունքը, երբ կամէին հանեցնել ազգը։ Օգոստոս կայսր, ինչպէս կը պատմէ ինք ի կտակին իւրում, յետ երկիցս տալոյ օտար ցեղէ թագաւոր, տեսնելով Հայոց դժգոհութիւնը՝ տուաւ թագաւոր զՏիգրան ոմն, ex regio genere Armeniorum oriundus, այսինքն «սերեալ յարքունի տոհմէն Հայոց» (Յիշատ. Անկիւր. Կիլմէն, Հնախօս, արևել.)։ Ըստ Խորենացւոյն Թէոդոս յետ Պապայ թագաւորեցուց զՎարազդատ, Արշակունի.—«Բարեացապարտն Թէոդոս... թագաւորեցոյց փոխանակ Պապայ զՎարազդատ ոմն ի նմին տոհմէ Արշակունեաց» (Խոր. Գ. Խ.)։ Շապուհ յետ թագաւորեցուցանելոյ զԽոսրով յԱրշակունի ցեղէ՝ առ նախարարս Հայոց, որ առ ի չգոյէ Արշակունի թագաւորի ցրուած էին՝ կը գրէ այսպէս. «Թագաւորեցուցաք ձեզ զԽոսրով ի զենէ ձերմէ և յազգէ բնիկ ծերոց տէրութեան» (Խոր. Գ. ԽԲ)։ «Իբրև լուան նախարարքն Հայոց, կը յաւելու Խորենացին, թէ կացոյց Շապուհ թագաւոր Արշակունի՝... դարձան ի բնակութիւնս իւրեանց» (Խոր. Գ. ԽԳ.)։

Այսոքիկ բաւական են ցուցնելու, թէ Արշակունիք էին հին Արտաշէսեան թագաւորաց սերունդ, որ յառաջ քան զմեծն Արշակ Խորենացւոյն միւսանգամ հաստատեցին հին Արտաշէսեան թագաւորութիւնը դարձեալ նոյն տեղը, այն է յԱրարատեան նահանգին առ Երասխաւ, և յորոց, ինչպէս տեսանք վերը՝ երկու յոյն պատմիչք, Պոլիբիոս և Ստրաբոն, մին ժամանակակից և միւսն մօտագոյն ժամանակաւ՝ կը յիշեն զԱրտաշէս. իսկ վերջինը, Ստրաբոն, զՏիգրան մեծ, ընդ որում ժամանակակից է և որ գիտենք թէ Արշակունի էր՝ կը յիշէ իբրև սերունդ Արտաշէսի և ի յաջորդաց նորա, առանց ամենևին յիշելոյ ո՛չ զՎաղարշակ և ոչ զերկոսին յաջորդս նորա զԱրշակ և զԱրտաշէս, որոց անուններն և պատմութիւնը կը գտնենք առ Խորենացւոյն միայն և ոչ այլ ուրեք ի պատմութեան։

**14.** Արդարև մեր պատմութենէն յայտնի է, թէ կար ազգականութիւն ի մէջ հայ Արշակունի և Պարթև թագաւորաց և թէ Արշակունիք իբրև նախնեաց իւրեանց սեպհական կը համարէին Պարսից կամ Պարթևաց տէրութիւնը։ Ըստ Բուզանդայ՝ Տիրանայ սենեկապետը Փիսակ ամբաստանեց զՏիրան առ Վարազ Շապուհ պարսիկ իշխան Ատրպատականի, որպէս թէ Տիրան կը խորհէր Պարսից թագաւորութիւնն, իբրև իւր նախնեաց սեպհականութիւն՝ հանել ի Սասանեանց.—«Ի կայսր և ի զօրս նորա յուսացեալ—ասէր Փիսակ—խորհի Տիրան (արքայ Հայոց) հանել զթագաւորութիւնն Պարսից յազգէն Սասանայ, զի ասէ, թէ Մեր լեալ է և հարցն մերոց այն տէրութիւնն» (Բուզ. Գ. Ի.)։ Այլուր կը պատմէ Բուզանդ, թէ

մինչ առ Շապհոյ էր Արշակ որդի Տիրանայ՝ Շապուհ փորձելու համար, թէ Արշակ պիտի մնա՞ր հաւատարիմ, եթէ Շապուհ արձակէր զնա ի Հայս՝ ըստ խրատուն քաւդէից կամ կախարդաց Պարսից հող բերել տալով Հայաստանէ՝ տարածեց գաղտ վրանի մը յատակը։ Արշակ մինչ պարսիկ հողին վրայ էր՝ խոնարհութեամբ կը խօսէր ընդ Շապհոյ ասելով. «Ահաւասիկ ծառայ քո ի ձեռս քո կամ. արա զիս զինչ և կամ իցէ. սպան զիս, զի ես ծառայ քո առ քեզ կարի յանցաւոր եմ, մահապարտ եմ»։ Բայց երբ Շապուհ բռնելով զձեռանէ Արշակայ բերաւ զնա հայ հողին վրայ՝ Արշակ սկսաւ ամբարտաւանութեամբ և խրոխտալով խօսիլ ընդ Շապհոյ այսպէս. «Ի բաց կաց յինէն, ծառայ չարագործ, տիրացեալ տերանցն քոց. այլ ոչ թողից քեզ և որդւոց քոց զվրէժ նախնեաց իմոց, զմահն Արտաւանայ արքայի. այժմիկ ձեր, ծառայից՝ զմեր, տերանց ձերոց զբարձ կալեալ է. բայց ոչ թողից, եթէ ոչ տեղիդ մեր առ մեզ եկեսցէ» (Բուզ. Դ. ԾԴ.)։ Այս պատմութիւնն արդարև առասպել է, բայց կը ցուցնէ, թէ հայ Արշակունիք յետ Խոսրովու, հօր Տրդատայ՝ Պարսից տէրութիւնը կը համարէին սեպհական նախնեաց իւրեանց և զՍասանեանս՝ եկամուտ և յափշտակիչ, վասն զի Պարթևաց վերջին թագաւորն Արտաւան, զոր Արտաշիր Սասանեան սպան և յինքն վարեց Պարսից տէրութիւնը՝ եղբայր էր Խոսրովայ, հօր Տրդատայ։

Այս աւանդութիւնը, թէ Արտաւան և Խոսրով եղբարք էին՝ կը գտնենք ի մէջ Հայոց ի չորրորդ դարու, և յայս ազգականութիւն հային վերոյիշեալ բանք եղեալք ի բերանս Տիրանայ և Արշակայ։ Այս կը տեսնուի նախ ի բանից Ագաթանգեղոսի, որ յետ յիշելոյ զսպանումն Արտաւանայ յԱրտաշրէ՝ ասէ զԽոսրովայ, թէ «էր ի մեծի տրտմութեան վասն բնութեան *եղբայրութեան* ազգատոհմին... և էր (Խոսրովու) դեսպան արարեալ, զի իւրեանց (Արտաւանայ և Խոսրովու) տոհմայինքն (եղբարք և ազգականք) ի թիկունս եկեսցեն»... այլ նոքա «միամտեալ և հաւանեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմի և *եղբայրութեանն*» (Ագաթ. Ա.)։ Հայոց նամակն առ Թէոդոս կայսր առ Եղիշէի՝ զԱնակ որ սպան զԽոսրով հայրն Տրդատայ՝ *հօրեղբայր* կը կոչէ Տրդատայ.—«Վասնորոյ և նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող *հօրեղբարցն* իւրոց՝ ապրեալ սնաւ յերկրին Յունաց» (Եղիշ. տպգր. Վենետ. 1828, էջ 123)։ Արդ՝ Անակ եղբայր էր Արտաւանայ, ինչպէս կը տեսնուի յակնարկութենէ Ագաթանգեղոսի (Ագաթ. Բ.), և մանաւանդ ի պատմութենէն, զոր կը բերէ Խորենացին Խոռոհբուտ

անուն պարսիկ հեղինակէ մը, զորմէ ասէ լեալ դպիր Շապհոյ թագաւորին Պարսից։ Ըստ այս պատմութեան՝ կային երեք ցեղք ազգակիցք Արտաւանայ, յորոց երկուքն նախանձ ունելով ընդ Արտաւանայ ի պատճառս թագաւորելոյ նորա՝ միաբանած էին ընդ Արտաշրի որդւոյ Սասանայ. մին միայն չմիաբանելով ընդ Արտաշրի՝ փախած էր, այն է Վեհսաճան, Կամսարականաց նախնին։ Ահա բանք Խորենացւոյն. «Յետ սպանանելոյն զԱրտաւան և թագաւորելոյն Արտաշրի որդւոյ Սասանայ՝ երկու ցեղք Պահլաւին (Արտաւանայ և Խոսրովու ցեղն ըստ այն պատմութեան Պահլաւ կամ Պահլաւեան կը կոչուէր) որ Ասպահապետի և Սուրենեան Պահլաւն անուանին, նախանձ պահելով ընդ թագաւորել ցեղին իւրեանց *հարազատութեան* ազգին՝ կամաւ յանձն առին թագաւորել Արտաշրի որդւոյ Սասանայ». բայց Կարն անուանեալ Պահլաւն «մտերմութիւն պահելով առ *եղբայրութիւն* ազգականութեան տան (Արտաւանայ)՝ ընդդիմացան պատերազմաւ Արտաշրի որդւոյ Սասանայ» (Խոր. Բ. ՀԱ.)։ Այս երրորդ եղբօր, որ ըստ պարսիկ հեղինակին կը կոչուէր Վեհսաճան, թոռն էր Կամսար, որ առ Տրդատաւ եկն ի Հայս և իբրև մօտ ազգական, այսինքն իբրև հօրեղբօր թոռն՝ մեծ սիրով և պատուով ընդունուեցաւ ի Տրդատայ, մինչև նորին իսկ Տրդատայ լինել կնքահայր ի մկրտել Կամսարայ (Խոր. Բ. Ղ.), ինչպէս նաև ցեղ նորա Կամսարականք ի մեծ պատուի էին, իբրև երկրորդ յետ տիրող տան (Խոր. Գ. ԼԱ, ԽԸ, ԿԵ.)։ Խորենացին Արտաւանայ, Խոսրովու և միւս երից եղբարց մերձաւորութիւնն ընդհանուր կ'առնու, իբրև ազգականութիւն կամ ցեղի մերձաւորութիւն, բայց պատմութեան պարագաները, «հարազատութիւն», «եղբայրութիւն» բառերը և մանաւանդ Հայոց նամակն առ Եղիշէի՝ կը ցուցնեն բաւական, թէ Արտաւան, Խոսրով և Անակ եղբարք էին։



## ԳԼՈՒԽ Գ.

## ՄԱՐ ԻԲԱՍ ԿԱՄ ԽՈՐԵՆԱՑԻՆ։

1. Հայոց նախնական ժամանակի պատմութեան ուրիշ աղբիւր մը. Մար Իբաս: 2. Մարիբասեան պատմութիւնն ընդհանրապէս: 3. Խորենացին իբրեւ մատենագիր եւ իբրեւ պատմիչ: 4. Հայոց պատմութիւն մը ունենալու առաջին խորհուրդն՝ ըստ Խորենացւոյն: 5. Նինուէի դիւանը. Հայոց հնագոյն պատմութիւնը պարունակող մատեան մը: 6. Հայկ, աշտարակաշինութեան հսկաներէն՝ առաջին նահապետ: 7. Նկարագիր Հայկայ, ապստամբութիւն նորա, փախուստ եւ շինութիւնք ի Հայս: 8. Յարձակումն Բելայ. պատերազմ եւ յաղթութիւն Հայկայ: 9. Մահ Հայկայ. Արմենակ՝ երկրորդ նահապետ. Խոռ, Մանաւազ, Բազ. Առաջին գաղթականութիւն՝ յԱրագած: 10. Արմայիս՝ երրորդ նահապետ. Շինութիւն Արմաւրի. Երասխ կը կոչուի. Շարա եւ Շիրակ. Հին գեղջկական առակ մը: 11. Ամասիա՝ չորրորդ նահապետ. Երկրորդ գաղթականութիւն՝ ի Մասիս. Շինութիւնք—Փառախոտ, Ցոլակերտ: 12. Գեղամ եւ Հարմա՝ հինգերորդ եւ վեցերորդ նահապետք. Շինութիւնք—Գեղաքունի, Գեղամի (Գառնի). Սիսակ. Սիւնիք: 13. Արամ. Պատերազմ ընդ Մարս. Նինոս: 14. Պատերազմ ընդ Ասորւոց եւ յարեւմուտս: 15. Արայ. Պատերազմ նորա ընդ Շամիրամայ եւ մահ: 16. Շինութիւնք Շամիրամայ ի Հայս. մահ նորա. Առասպելք Հայոց զՇամիրամայ: 17. Հայաստան յետ մահուան Արայի. Արայեան Արայ, Անուշաւան: 18. Հայաստան յետ Անուշաւանայ. Քսան եւ վեց իշխանք: 19. Ազդ Խորենացւոյն. Հայկակ, Զարմայր: 20. Վարբակէս, Պարոյր. Բարձումն տէրութեան Ասորեստանի: 21. Յաջորդք Պարուրի մինչեւ Տիգրան. Հրաչեայ: 22. Տիգրան: 23. Աժդահակ կը թշնամանայ ընդ Տիգրանայ. Երազ, խնամութիւն, պատերազմն եւ մահ Աժդահակայ. Մարաց գերութիւնը: 24. Յաջորդք Տիգրանայ. Վահագն. Վահէ. Անտէրնչութիւն մինչեւ ի Վաղարշակ:

**1.** Վերագոյն (էջ 1, 2) ի խօսել մեր զաղբերաց նախնական ժամանակի պատմութեան Հայոց՝ թողաք յիշել զՄար Իբաս, կամ զպատմիչն յորմէ առնու Խորենացին զիւր «Հայկազանց պատմութիւն», որ ի շնորհս համբաւաւոր հեղինակին և աղբերն ուստի հանուած կը պատմուի՝ մեծ ընդունելութիւն գտած է յազգին աւելի քան 1300 ամաց հետէ։

**2.** Մեր պատմութեան այն ժամանակին վրայ, որ ազգին ենթադրեալ սկիզբէն, այսինքն ի Հայկայ, մինչև Աղեքսանդր մեծ երկայն միջոց մը, երբ 2,000 տարի կը պարունակէ՝ մարիբասեան աղբիւրէն Խորենացւոյն միջոցաւ մեզի տրուած տեղեկութիւնք, զորս ամբողջ մէջ պիտի բերենք հանդերձ բնագրով՝ կարի համառօտ և անօսր են, այնպէս որ այն պատմութիւնը, որ կը տրուի մեզ յանուն Մար Իբասայ, թէև լինէր վաւերական և ստոյգ՝ չկարէր համարուիլ իբրև անընդհատ պատմութիւն այն հին երկար ժամանակին։ Արդարև մարիբասեան պատմութիւնն ոչ միայն զմեզ գոհացուցանող տարեգիր չէ, որպէս պարտ էր լինել ըստ անուանն և ծագման զոր կը պնդէ ունենալ, այլ և իրօք չի պարունակեր զՀայոց աւելի ինչ և նոր՝ քան զոր կը պարունակեն ուրիշ հին պատմութիւնք և հին ազգային աւանդութիւնք զայնր ժամանակի Հայոց։ Յանուանեալ մարիբասեան պատմութեան կան արդարև հատուածք ինչ, որպէս Հայկայ, Արամայ և Տիգրանայ պատերազմաց նկարագիրք, որ շատ աւելի ընդարձակ են քան որչափ կը պահանջուի տարեգրէ մը, և բուն իսկ այս պատճառաւ կասկածելի. բայց այն պատմութիւնը, եթէ ամբողջ նկատուի՝ բոլորովին ցանցառ է, աղքատ յոյժ պատմական դիպօք։ Արդարև զարմանք է, որ Հայկայ մինչև մազերուն գանգուրը, կռուին մէջ զփքինն իւրոյ վիրագին մարմնոյն ո՛ր դին դիպեցուցանելն անգամ նկարագրող պատմութիւնն՝ յետոյ յանկարծ կը պապանձի և ամբողջ դարերու վրայէն լռութեամբ անցնելով՝ ոչ այլ ինչ գտանէ ի յիշել՝ բայց անուններու երկայն ցանկ մը։ Իւր այս աղքատութեամբն հանդերձ, մեր հին պատմութեան իբրև անգին աղբիւր պիտի ընդունէինք մարիբասեան ծաղկաքաղը՝ եթէ տեղի չտար մեզ տարակուսելոյ զստուգութենէ և զվաւերականութենէ իւրմէ։

Աւելի սակաւ էին թուով, բայց ստուգութեան կողմանէ անգին, այն ըստ դիպաց իմն և անուղղակի տրուած տեղեկութիւնք, զորս բերաք ուրիշ հին աղբիւրներէ, ինչպէս ի Հրէից գրոց, ի Հերոդոտոսէ, ի Քսենոփոնէ և այլուստ։ Այն տեղեկութիւնք արդարև ոչ իբրև տիւ կը լուսաւորեն մեր պատմութեան այն հին և աղօտ ժամանակը, բայց իբրև լուսոյ շառաւիղներ ժամանակ ժամանակ ծագելով մեր պատմութեան վրայ՝ մաս մը տեղ կը լուսաւորեն, ոչ առանց արձակելոյ գէթ աղօտ շող մը ընդհանրոյն վրայ։

**3.** Մեք զմարիբասեան պատմութիւնն գիտեմք Խորենացւոյն միջոցաւ միայն. բուն աղբիւրը ծանօթ չէ մեզ։ Խորենացւոյն թէ իբրև մատենագիր և թէ իբրև պատմիչ առաւելութիւններն չեն կրնար ուրացուիլ։ Ընդհանրապէս խօսելով՝ իբրև հայերէն մատե-

նագրութիւն՝ Խորենացւոյն գիրքը մեր նախնի մատենագրութեան մնացորդաց մէջ երևելիներէն մին է։ Ոչ բոլորովին յստակ, բայց ինքեան յատուկ ընտիր բառերով, հակիրճ՝ այլ պերճ և հարուստ, միանգամայն զուարթ ոճով, մանաւանդ նկարագիրներու մէջ՝ Խորենացին կը հաւասարի իւիք իրօք՝ քան զնա առաջիններուն, որպիսի են Ագաթանգեղոս, Բուզանդ, Եզնիկ, իսկ քան զնա յետնոց, Եղիշէի, Փարպեցւոյն և այլոց մէջ Խորենեան ոճոյն ստուերն անգամ չի տեսնուիր։ Հայկայ պատերազմին, ինչպէս նաև Ձիրաւի ճակատուն, տեղագրութեանց մէջ Արագածու դաշտին և Երուանդակերտի նկարագիրներն և ուրիշ ոչ սակաւ նկարագիրք՝ ոչ մերայոց միայն—յոյն և հռոմայեցի մատենագրաց մէջ անգամ հազիւ ունին զիւրեանց նմանն. գրեթէ չիք գլուխ, ուր չիցէ տեսանելի մատենագրական հանճար հեղինակին. ամէն դէպ, ամէն պարագայ ընդ գրչաւ Խորենացւոյն առնու գեղեցկութիւն, վսեմութիւն, ոյժ և կենդանութիւն։ Պարբերութիւն չկայ, իմաստ չկայ, որ բոլոր գիրքին հիմը կազմող բարձրութենէն անկանի կամ նուաստանայ։ Միով բանիւ Խորենացւոյն պատմութիւնը բազմարուեստ ճարտարագործ պատկերներու թանգարան է, որ կը հիացնէ և կը յագեցնէ տեսնողը մինչև ցզմայլումն։ Սուտ է, թէ Խորենեան ոճոյն մատենագրական գերազանցութիւնը բնագրին կից է, ինչպէս մարմնոյ մը յատկութիւնը մարմնոյն հետ. գէթ մինչև ցարդ թարգմանութիւն մը չկրցաւ կաղապարել այս բնագիրն ինչպէս որ է իւր բանասիրական գոյներովը. այնպէս որ Խորենացին իբրև մատենագիր՝ պարտ է նոյն իսկ Խորենացւոյն մէջ տեսնել։ Մի միայն թերութիւն ոճոյ նորա են սակէպ զեղչմունք և զարտուղութիւնք, որովք կամի կարճառօտ և ազդու երևել. բայց, հակառակ կանոնաց լեզուի, երբեմն այնպէս կը խրթնանայ՝ մինչև յանել լաբիւրինդոս արկանել զընթերցողն։

Ոչինչ ընդհատ երևելի է Խորենացին նաև իբրև պատմագիր։ Դիպաց զանազանութիւն և հարստութիւն, սակէպ պատմական շեղումներով, որ կամ անձանց և տեղեաց նկարագիրներ են և կամ հանճարեղ դիտողութիւններ, միանգամայն ազգային երգերու և աւանդութեանց սակէպ յիշատակութիւնք՝ ապացոյց են պատմական հմտութեան և ճաշակի նորա. երկու գլխաւոր յատկութիւնք՝ որ մեր հին պատմիչներէն և ոչ միոյն, իսկ արտաքիններէն սակաւուց քով կը տեսնուին։ Այսպիսի և այսչափ եզական յատկութեանց հետ ցաւ է տեսնել մեր ծերունի պատմագիրը քննադատութեան կողմանէ թերի։

Խորենացին կ'ընդունի առանց քննութեան, և կը պատմէ ա-

ռանց տպացուցի։ Զորօրինակ, Մար Իբաս ի Վաղարշակայ կը ղրկուի Նինուէ, և հոն ի վաղուց պահուած դիւանէ կը բերէ Հայոց պատմութիւն մը. Վաղարշակ իբրև անգին գանձ կը պահէ զայն մեծ զգուշութեամբ յարքունիս իւր, նաև զմասն ինչ անտի կը հրամայէ դրոշմել ի վիմի։ Այսոքիկ պատահին երբ. 650 կամ 700 ամօք յառաջ քան զնոյն ինքն Խորենացին։ Հարիւրաւոր տարիներու միջոցին Հայոց մէջ պատահած բոլորովին ներքին դէպք—գաղթականութիւնք, շինութիւնք, պատերազմներ, իշխանաց յաջորդութիւնք հանդերձ անուամբ նոցա—այս ամենայն որպէս թէ կը գրուին և կը պահուին Նինուէի դիւանին մէջ, և Աղեքսանդր մեծ թարգմանել կուտայ այս և ուրիշ դէպքեր պարունակող մատեանն ի յոյն լեզու։ Այս ամենայն կը կատարուի ութ հարիւր, հազար և թերևս հազար հինգ հարիւր տարի յառաջ քան զԽորենացին, և բարեմիտ պատմագիրն զայսօրիկ, որպէս թէ յիւրում ժամանակի և առաջի աչաց իւրոց պատահեալ իրեր՝ կ'ընդունի առանց քննելու և առանց բնաւ երկբայելու։ Պատմագիր մը չկարէ իւր պատմութեան մէջ իբրև լեալ ի մէջ բերել դէպք մը, որում ինք ականատես չէր՝ առանց փնտռելու և ցուցնելու այն դիպաց ստուգութեան փաստերը։ Խորենացին կը ջանայ նաև ծածկել իբրև գաղտնիք մարիբասեան մատենին վերաբերեալ իւր անգին գիւտը, չկամելով ամենևին ասել մեզ, թէ զի՛րդ և ո՛ւր ձեռք բերաւ այն բնագիրը, կամ թէ ի՛նչ լեզուաւ էր այն, յունարէ՞ն թէ ասորերէ՞ն։ Նոյն գաղտնիքը կը պատէ բուն իսկ բնագրին խմբագրութեան պատմութիւնը։ Այս խմբագրութեան վրայ Խորենացւոյն խօսքերն այնպէս շփոթ և կեղծակարծ են՝ որ այն աղբեր ծագման և մատենագրութեան միջոցներուն և եղանակին վրայ որոշ գաղափար ունենալ անհնար է։ Մերթ կը տեսնենք Նինուէի արքունի դիւանին մէջ այն պատմութեան ոչ թէ քաղդէարէն բնագիրը, այլ յունարէն թարգմանութիւնը, և կը կարդանք, թէ ի նմա պարունակեալքն բուն հնոց և նախնեաց խօսքերն էին.—«Աղաչեմ ... հրամայես առաջի առնել զդիւանն արքունի ընդդէմ առնդ (Մար Իբասայ)...։ Արշակ... հրամայէ առաջի առնել նմա զդիւանն արքունի որ ի Նինուէ...։ Խուզեալ սորա (Մար Իբասայ) զամենայն մատեանսն՝ գտանէ մատեան մի հելլէն գրով ... հրամանաւ Աղեքսանդրի ի քաղդէացւոց բարբառոյ փոխեալ ի յոյն, որ ունէր *զբուն հնոց եւ զնախնեացն բանս* (Խոր. Գիրք Ա. Գլ. Թ.)։ Մերթ կը կարդանք, թէ այն (Հայկազանց) պատմութիւնը բուն արքունի մատեաններուն մէջ գըրուած չէր, քանզի քաղդէացիք պէտք չունէին օտար և հեռաւոր աշխարհաց հին համբաւները կամ զրոյցներն իրենց թագաւորաց

մատեաններուն մէջ գրել. մանաւանդ զի պարծանք ինչ չէր նոցա՝ օտար ազգաց քաջագործութիւններն յիշատակել, այլ քանի մը փոքր և աննշան մարդիկ այն պատմութիւնը վիպասանութիւններէ հաւաքեցին.—«Այսոքիկ (Հայկազանց վրայով պատմուածներն) ի բուն մատեանս թագաւորաց ոչ յիշատակեցան... զի ոչ հարկ ինչ և ոչ պէտք կարևորք էին նոցա (Քաղդէացւոց)՝ զազգաց օտարաց և զաշխարհաց ի բացեայ, և զհամբաւս հինս և զդոյցս նախնականս յիւրեանց թագաւորաց մատեանս գրել. մանաւանդ զի և ոչ պարծանք ինչ (էին) նոցա... օտար ազգաց քաջութիւն և գործք արութեան: Սակայն ի փոքունց ոմանց եւ յաննշանից արանց ի զուսանականէն այս գտանի ժողովեալ» (Խոր. Գիրք Ա. Գլ. ԺԳ.)։ Դարձեալ ուրիշ տեղ սոյն հակառակը կը կարդանք, թէ մեր նախնեաց (Հայկազանց) գործքերը և անունները, իբրև Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից կողմանէ դրուած գործակալներու գործքեր և անուններ՝ այն ազգերուն բուն արքունի մատեաններուն մէջ գրուեցան, և թէ զանոնք նոյն ինքն Խորենացին հանեց այն ազգերուն դիւաններէն.—«Եթէ ասիցեն. ուստի՞ մեզ զնախնեացն մերոց բազմաց այսպէս գտանել զանուանս և զգործս՝ ասեմ. ի հնոցն դիւանաց Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից, վասն մտելոց անուանց և գործոց նոցա ի քարտէս արքունի, իբր գործակալաց և վերակացուաց աշխարհիս ի նոցանէ կացելոց» (Խոր. Գիրք Ա. Գլ. ԻԱ.)։

Այսպէս մեր ծերունի պատմագիրն, ինք իրեն հակառակ՝ մարիբասեան պատմութիւնը Քաղդէացւոց արքունի դիւանին մէջ գտնելով՝ մերթ ասէ թէ այն պատմութիւնը գրողք բուն Քաղդէացիք էին, և մերթ փոքունց ոմանց և աննշանից կու տայ զայն հաւաքել. մերթ հանել կու տայ զայն Մար Իբասայ ձեռքով Նինուէի դիւանէն, և մերթ հարցանողաց, թէ ուստի՞ գտաւ այն պատմութիւններն՝ պատասխան կու տայ, թէ ինք հանեց Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից դիւաններէն։

Զխորենացւոյն այսչափ ինչ ասել բաւական համարելով՝ տեսնենք թէ ինչպէս ձեռք բերուեցաւ այս մարիբասեան պատմութիւնը և ինչ բաներ կը պարունակէր այն։

4. Ըստ Խորենացւոյն՝ նախ Վաղարշակ յղացաւ Հայոց պատմութիւն մը ունենալու խորհուրդը, Վաղարշակ, որ իբր 150-ին նախ քան զՔր. յեղբօրէն իւրմէ ի մեծէն Արշակայ դրուած էր թագաւոր Հայոց և Միջագետաց և որ պատուէր ընդունած էր յեղբօրէն՝ իմաստութեան և քաջութեան հոգ տանել։ Ահա Խորենացւոյն պատմութիւնը։—Վաղարշակ իւր իշխանութիւնը կարգի դնելով և հաս-

տատելով զԹագաւորութիւն իւր՝ կամեցաւ գիտել, թէ ո՞յք և ո՞րպիսի մարդիկ տիրած էին Հայաստանի յառաջ քան զնա, քաջմց թէ վառաց տեղը կը բռնէր։ Եւ գտեալ ասորի ոմն Մար Իբաս Կատինա, ուշիմ և վարժ քաղդէացի և յոյն դպրութեամբ՝ կը ղրկէ արժանի ընծայիւք առ Արշակ, եղբայր իւր՝ բանալ նմա զդիւանն արքունի, և գրէ առ Արշակ այսպէս. «Արշակ երկրի և ծովու թագաւոր, որոյ անձն և պատկեր՝ աստուածոց է, իսկ բախտն քան զամենայն թագաւորաց և քան զմտաց լայնութիւն այնչափ ի վեր, որչափ ի վեր են երկինք քան զերկիրս. կրտսեր եղբօրէդ և նիզակակցէ որ ի քէն կարգեցաւ թագաւոր Հայոց՝ ողջոյն ամենայն յաղթութեամբ։ Որովհետև պատուէր ընկալայ ի քէն քաջութեան և իմաստութեան հոգ տանել՝ անփոյթ չեղէ քո խրատուն, այլ խնամ տարեալ հոգացայ զամենայն, որչափ միտք և կարողութիւն իմ բաւեցին։ Եւ արդ որովհետև քո խնամով հաստատուեցաւ թագաւորութիւնս՝ խորհեցայ գիտել, թէ ո՞յք յառաջ քան զիս տիրած են Հայոց և ուստի՞ են նախարարութիւնք երկրիս. քանզի աստ ոչ կարգք կը տեսնուին, ոչ մեհենից պաշտամունք, և ոչ երկրին գլխաւորներուն առաջինն և վերջին յայտնի են. չիք ինչ օրինաւոր, այլ ամենայն ինչ խառն ի խուռն և վայրենի։ Ուստի կը խնդրեմ տէրութենէդ՝ հրամայել զդիւանն արքունի բանալ մարդուն որ քո հզօր տէրութեանդ առջև պիտի գայ, որպէս զի գտնելով զեղբօր քո և որդւոյ ըղձալին՝ շուտով բերէ. և լաւ գիտեմ, թէ զուարճութիւնը զոր կ'զգանք քոց կամաց հնազանդելով՝ քեզ ևս ուրախութեան պատճառ է։ Ողջ լեր, երեւելիդ ի դիւցազունս»։

Սորա (Վաղարշակայ) կարգեալ զիշխանութիւն իւր մեծապէս, և հաստատեալ զԹագաւորութիւն իւր՝ կամ եղև գիտել սորա, թէ ո՞յք և ո՞րպիսի արք տիրեալ են ի վերայ աշխարհիս Հայոց մինչև ցնա, զքաջմց արդեօք եթէ զվառաց անցեալ ունիցի զտեղի։ Եւ գտեալ զոմն ասորի Մար Իբաս Կատինա, ուշիմ և վարժ քաղդէացի և յոյն գրով, զոր յղէ առ մեծ եղբայրն իւր Արշակ արժանի ընծայիւք, բանալ նմա զդիւանն արքունի։ Եւ գրէ առ նա ձև բանից օրինակ զայս. Արշակ Թագաւոր երկրի և ծովու, որոյ անձն և պատկեր՝ որպէս և է իսկ մեր աստուածոց, իսկ բախտ և պատահումն՝ ի վեր քան զամենայն Թագաւորաց, և մտաց լայնութիւն՝ որչափ երկնի ի վերայ երկրի. Վաղարշակ կրտսեր եղբայր քո և նիզակակից, որ ի քէն կարգեալ արքայ Հայոց. ողջ լեր ամենայն յաղթութեամբ։ Քանզի պատուէր ընկալայ ի քէն քաջութեան և իմաստութեան հոգ տանել՝ ոչ երբէք անփոյթ արարեալ զքոյումն խրատու, այլ խնամ տարեալ հոգացայ ամենայնի որչափ միտք և հասողութիւն բաւեցին։ Եւ այժմ ի քումմէ խնամակալութենէ զետեղեալ

թագաւորութիւնս՝ խորհուրդ ի մտի եդի գիտել, թէ ոյք ոմանք յառաջ քան զիս իցեն տիրեալ աշխարհիս Հայոց և ուստի՛ նախարարութիւնքս որ աստ կան։ Զի ոչ կարգք ինչ լեալ աստ յայտնի, և ոչ մեհենից պաշտամունք, և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն և վայրենի։ Վասն որոյ աղաչեմ զքոյ տէրութիւնդ, հրամայես բանալ զդիւանդ արքունի ընդդէմ առնդ եկելոյ առաջի քոյոյ հզօր տէրութեանդ, զի գտեալ զըղձալին եղբօր քո և որդւոյ՝ բերցէ զատոյգն փութապէս. և զմեր հեշտութիւն, որ ի կամակատարութենէ լեալ՝ քաջ գիտեմ խնդութիւն քեզ լեալ։ Ողջ լեր, երևելիդ բնակութեամբ ի մէջ դից»։

**5.** «Արշակ, ասէ Խորենացին, ընդունելով զթուղթն ի ձեռաց Մար Իբասայ՝ մեծ լրջմտութեամբ կը հրամայէ բանալ առաջի նորա Նինուէի դիւանը, ուրախանալով որ այսպիսի մտաց տէր էր եղբայրն, առ որ հաւատացած էր իւր թագաւորութեան կէսը։ Մար Իբաս (դիւանին) բոլոր գիրքերը խուզելով կը գտնէ մատեան մի յունարէն, յորոյ վերայ գրուած էր այսպէս. Այս գիրք, որ կը պարունակէ զբանս բուն հնոց և նախնեաց՝ Աղեքսանդրի հրամանաւ թարգմանուեցաւ քաղդէարէնէ յունարէն։ Այս գիրք կը յիշէր նախ զՁրուան, Տիտան և Յապետոսթէ (այսինքն՝ Սեմ, Քամ, Յաբեթ), և այս երեք նահապետաց սերունդէն երևելի մարդոց անունները դարերով կը շարէր կարգաւ»։ «Այս գիրքէն, ասէ Խորենացին, հանելով Մար Իբաս մեր ազգին հաւաստի պատմութիւնը՝ կը բերէ առ Վաղարշակ ի Մծբին յոյն և ասորի լեզուաւ։ Վաղարշակ առնլով զայս պատմութիւն՝ իբր իւրոյ գանձուն առաջինը, մեծ զգուշութեամբ կը պահէ յարքունիս իւր և մաս մը այն պատմութենէն կը հրամայէ արձանի (քարի) վրայ գրոշմել։ Ասկէ (արձանէն թէ գիրքէն) մեք ստուգիւ տեղեկանալով ահա կը պատմենք»։

Եւ ընկալեալ Արշակայ մեծի զգիրն ի ձեռաց Մարիբասայ Կատինայ՝ մեծաւ լրջմտութեամբ հրամայէ առաջի առնել նմա զդիւանն արքունի որ ի Նինուէ, միանգամայն և ուրախացեալ այնպիսի միտս ունել եղբօր իւրոյ, որում զկէս թագաւորութեան իւրոյ հաւատացեալ էր։ Եւ խուզեալ սորա զամենայն մատեանսն՝ գտանէ մատեան մի հելլէն գրով, յորոյ վերայ էր, ասէ, վերնագիրն այսպիսի. Այս մատեան հրամանաւ Աղեքսանդրի ի Քաղդէացւոց բարբառոյ փոխեալ ի յոյնն, որ ունի զբուն հնոց և զնախնեացն բանս։ Որոյ (մատենին) սկիզբն լեալ ասէ զՁրուանն, զՏիտանն և զՅապետոսթէ, յորում և զիւրաքանչիւր ոք ի ծննդոց երից նախարարականացս այսոցիկ արանց զարս անուանիս կարգաւ շարադասել յիւրաքանչիւր տեղիս մինչև ցբազում ամս։ Յայսմ մատենէ Մար Իբաս Կատինա զմերոյ ազգին միայն հանեալ զպատմութիւն հաւաստի՝ բերէ առ արքայ Վաղարշակ ի Մծբին յոյն և ասորի գրով։ Զոր առեալ Վաղարշակ . . . առաջին իւրոյ գանձուն համարելով՝ դնէր յարքունիսն ի պահեստի մեծաւ զգուշութեամբ, և զմասն ինչ ի յար-

ձանի հրամայէ դրոշմել։ Ցորմէ մեր հաւաստի ի վերայ հասեալ կարգի գրուցայս՝ երկրորդեմք այժմ քոյ հարցասիրութեանդ։

**6.** Ետ ասելոյ զայսոսիկ՝ Խորենացին Մար Իբասայ գիրքէն կը բերէ սա հատուածը. «Աստուածներուն մէջ առաջինները ահեղ և երևելի են և ամէն բարեաց պատճառ. աշխարհի և բազմամարդութեան սկիզբն զարձեալ նոքա են։ Ի սոցանէ սերեցան հսկայք, անհեղեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք, որք և ամբարտաւանութեամբ յղանալով ծնան աշտարակաշինութեան ամբարիշտ խորհուրդը, և զայն գլուխ հանելու ջանացին. բայց աստուածոց բարկութենէն ահագին հով մը փչելով ցրուեց ամբարտակը, և մարդոց անլուր լեզուներ տրուեցան, և այնպէս աղմուկ և շփոթութիւն անկաւ ի նոսա։ Այս հսկաներէն մին էր Յապետոսթեանն Հայկ, անուանի քաջ նահապետն, կորովի աղեղնաւոր»։ «Բայց այս խօսքերն թողունք, ասէ Խորենացին, քանզի նպատակ մեր՝ ոչ (Մար Իբասայ) ամբողջ պատմութիւնը գրել է, այլ ջանալ ցուցնել մեր բուն և առաջին նախնիներն, որ են, նոյն գիրքէն առնլով ասեմ, Յապետոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թակլաթ, այն է Յաբեթ, Գոմեր, Թիրաս, Թորգոմ. և յետ սոցա կու գան, ըստ նոյն պատմագրին, Հայկ, Արմենակ և որ ի կարգին, զորոց անուններն յառաջագոյն յիշեցինք»։ Այսինքն Արմայիս, Ամասիա, Գեղամ, Հարմայ, Արամ և Արայ, զորս յիշած է Ա. գիրքի Ե. գլխոյն մէջ)։

Ահեղք և երևելիք առաջինքն ի դիցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ ի սոցանէ հատեալ գոյան ազգ սկայիցն, անհեդեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք, որք յղացեալ ամբարտաւանութեամբ՝ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն և նոյն լինէին ի գործ անկեալք. յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ ի դիցն ցասմանէ՝ ցրուէ զամբարտակն, և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ՝ աղմուկ շփոթի ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և Յաբեթոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն։ Այս կարգ գրուցաբանութեան դադարումն առցէ, զի հանդէս է մեր՝ ոչ զպատմութեանն ողջաբանութիւն գրել, այլ ջանալ ցուցանել զառաջինսն մեր և զբուն հին նախնիս։ Արդ ի նոյն մատենէ սկսեալ ասացից. Յաբեթոսթէ, Մերոդ, Սիրաթ, Թակլադ, որ է Յաբեթ, Գոմեր, Թիրաս, Թորգոմ։ Յետ որոյ նոյն ժամանակագիր յառաջ մատուցեալ ասէ. Հայկ, Արմենակ, և զայլսն ի կարգի, զորոց յառաջագոյն ասացաք։

**7.** Այսպէս յետ յօրինելոյ զազգահամար Հայկայ և տոհմի նորա՝ Խորենացին սկսանի զպատմութիւն նոցա, որպէս թէ ի Մար Իբասայ առնլով բառ առ բառ, ինչպէս յայտնի է սաէ բառէն։

«Այս Հայկ, ասէ (Մար Իբաս), գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ, քաջ և երևելի ի հսկայս, դէմ կեցաւ ամենուն՝ որ բոլոր հսկայից և դիւցազանց վրայ իշխել կը մտաբերէին։ Հայկ ընդդիմացաւ Նաև Բելայ, որ բազմակոյտ և ուժեղ հսկայից մէջ ուզեց բռնանալ, երբ մարդիկ հանդերձեալ էին ցրուել երկրիս երեսին վրայ։ Քանզի մինչ իւրաքանչիւր մոլեգնեալ, սուր ի կող ընկերի իւրոյ մխելով կը ջանար տիրել ամենուն վրայ՝ Բելայ յաջողեցաւ տիրել բոլոր երկրի։ Հայկ չուզելով հնազանդել Բելայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրմենակ ի Բաբելոն՝ որդւովք և դստերօք և որդւոց որդւովք, իբր երեք հարիւր զօրաւոր մարդկամբ և ուրիշ ընդոծնօք, Նաև օտարներով որ ի նա յարեցան և բոլոր աղխիւ՝ ել գնաց դէպի հիւսիս Արարատայ երկիրը, ուր բնակեցաւ լերան մը ոտքը դաշտի վրայ, ուր կը բնակէին յառաջագոյն ցրուեալներէն սակաւք, զորս Հայկ հնազանդեցուց, և բնակութեան համար կալուածներ հաստատելով տուաւ ժառանգութիւն Արմենակայ որդւոյն՝ Կադմեայ։ Այս կ'արդարացնէ հին անգիր զրոյցները»։ «Եւ ինքն (Հայկ), ասէ (Մար Իբաս), — կը յաւելու Խորենացին — ուրիշ աղխիւ յառաջ կ'երթայ դէպի հիւսիսային արևմուտք, և կը բնակի բարձր դաշտի մը վրայ, և լեռնադաշտակը կ'անուանէ Հարք. այսինքն թէ հոս բնակեցան Թորգոմեան ազգին նախահարք։ Շինէ և գիւղ մի յիւր անուն Հայկաշէն»։ «Հոս կը յիշուի նաև, թէ, ասէ Խորենացին, այս դաշտին հարաւային կողմը երկայնանիստ լերան մը ստորոտով կանխաւ կը բնակէին քիչ մարդիկ, որ ինքնակամ հնազանդեցան դիւցազին»։ Այս ևս, ըստ Խորենացւոյն՝ կ'արդարացնէր անգիր զրոյցները։

Այս, ասէ (Մար Իբաս), Հայկ, գեղապատշաճ և անձնեայ, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ. սա ի մէջ սկայիցն քաջ և երևելի լեալ, ընդդիմակաց ամենեցուն որ ամբառնային զձեռն միապետել ի վերայ ամենայն սկայիցն և դիւցազանց։ Սա խրոխտացեալ ամբարձ զձեռն ընդդէմ բռնաւորութեան Բելայ, ի տարածանել ազգի մարդկան ընդ լայնութիւն ամենայն երկրի, ի մէջ բազմակոյտ սկայիցն, անհուն խօլաց և ուժաւորաց։ Քանզի անդ մոլեգնեալ այր իւրաքանչիւր սուր ի կող ընկերի իւրոյ ձգելով ջանային տիրել ի վերայ միմեանց, ուր պատահմունք ի դէպ եղանէին Բելայ՝ բռնանալ ունել զամենայն երկիր։ Որում ոչ կամեցեալ Հայկայ հնազանդ լինել Բելայ, յետ ծնանելոյ զորդի իւր զԱրմենակ ի Բաբելոնի՝ չու արարեալ գնայ յերկիրն Արարատայ որ է ի կողմանս հիւսիսոյ, հանդերձ որդւովք իւրովք և դստերօք և որդւոց որդւովք, արամբք զօրաւորօք, թուով իբրև երեքհարիւր, և այլովք ընդոծնօք և եկօք յարեցելովք ի նա և բոլոր աղխիւ։ Երթեալ բնակէ ի լեռնոտին միում ի դաշտավայրի, յորում սակաւք ի մարդ-

*կանէ յառաջագոյն ցրուելոցն դադարեալ բնակէին, զորս հնազանդ իւր արարեալ Հայկ՝ շինէ անդ տուն բնակութեան կալուածոց, և տայ ի ժառանգութիւն Կադմեայ, որդւոյ Արմենակայ։ Այս արդարացուցանէ զանգիր հին ասացեալ զրոյցս։ Եւ ինքն խաղայ, ասէ, այլով աղխիւն ընդ արեւմուտս հիւսիսոյ, գայ բնակէ ի բարձրաւանդակ դաշտի միում, և անուանէ զանուն լեռնադաշտակին Հարք, այսինքն՝ աստէն բնակեալքս ազգի տանն Թորգոմայ։ Շինէ և գիւղ մի և անուանէ յիւր անուն Հայկաշէն։ Յիշի և աստանօր պատմութիւնս. հարաւոյ կողմանէ դաշտիս այսորիկ առ երկայնանստիւ միով լերամբ բնակեալ յառաջագոյն արք սակաւք՝ ինքնակամ հնազանդեալ դիւցազինն։ Արդարացուցանէ և այս զասացեալ զրոյցս անգիրս։*

8. *«Յառաջ տանելով—ասէ Խորենացին—Մար Իբաս զբանս իւր՝ կը պատմէ այսպէս. Տիտանեանն Բէլ յետ հաստատելոյ զիւր թագաւորութիւն ամենուն վրայ՝ զմին յորդւոց իւրոց կը ղրկէ քանի մը հաւատարիմ մարդկամբ դէպ ի հիւսիս առ Հայկ, որպէս զի հնազանդելով ապրի խաղաղութեամբ. Բնակեցար, ասէ (Բէլ), սառնամանեաց ցրտութեան մէջ. բայց տաքցնելով մեղմացուր հպարտ բարուցդ սառուցեալ ցրտութիւնը, և հնազանդելով ինձ հանդարտութեամբ ապրէ ուր և հաճոյ է քեզ յերկրիս իմում։ Իսկ Հայկ խիստ պատասխաններով յետ դարձուց Բէլայ պատգամաւորները։ Ղրկուողը կը դառնայ Բաբելոն։*

*Բէլ զօրք ժողվելով հետեւակ զօրաց մեծ բազմութեամբ կու գայ Հայկայ վրայ դէպ ի հիւսիս Արարատայ երկիրը, Կադմեայ տանը մօտ։ Կադմոս կը փախչի առ Հայկ, առջեւէն սուրհանդակ ղրկելով, թէ Գիտցիր, ո՛վ մեծ դիւցազն, զի Բէլ քաջ և երկայնահասակ հսկայ մարտիկօք գայ ի վերայ քո։ Ես իմանալով զմերձենալ նորա ի տուն իմ՝ փախայ և կու գամ ահա փութով։ Աճապարէ խորհել զինչ առնել արժան է։ Իսկ Բէլ իւր յանդուգն և անճոռնի բազմութեամբ, լեռնէ վայր թափող սաստիկ հեղեղի պէս, զօրաւոր մարդոց ուժոյն և քաջութեանն ապաւինեալ՝ կը փութար հասնել Հայկայ բնակութեան տեղը։ Աստ ուշիմ և խոհեմ հսկայն (Հայկ) աճապարելով կը ժողվէ զիւր որդիս և զթոռունս, քաջ և աղեղնաւոր բայց թուով շատ նուազ մարդիկ, նաև զայլս որ էին ընդ իւրով ձեռամբ, և կը հասնի աղի ջուր և մանր ձուկեր ունեցող ծովակի մը եզրը։ Հոն կոչելով զզօրս իւր ասէ. Երբ Բէլայ բազմութեան դէմ կ'ելլենք՝ ջանանք պատահել տեղւոյն՝ ուր կը կենայ Բէլ քաջաց բազմութեան մէջ, այնպէս որ կամ մեռնինք, և մեր կարասին Բէլայ ձեռք իյնայ, և կամ մեր մատանց յաջողութիւնը ցուցնենք ի նա, ամբոխը ցրուի և տանանք յաղթութիւնը։*

*Եւ յառաջ խաղալով ասպարէզս ինչ՝ բարձր լերանց վրայ դաշ-*

տանձև տեղ մը կը հասնին, և գետի մը աջ դին բարձր տեղ մը կը կենան պատրաստ։ Վեր նայելով տեսան Բելայ անկարգ ամբոխին բազմութիւնը, որ երկրին երեսին վրայ յանդուգն յարձակմամբ կ՚արշաւէր։ Իսկ Բէլ մեծ ամբոխիւ հանդարտ կը կենար գետին ձախ դին բլրակի մը վրայ իբրև ի դիտանոցի։ Հայկ տեսաւ, թէ Բէլ այս խմբին առջև կեցած էր ընտիր ընտիր վառեալք, և ի մէջ խմբի նորա և մնացեալ զօրաց երկար միջոց կար։ Բէլ գլխանոց ունէր երկաթի, նշանաւորօք վերջօք, ի վերայ թիկանց և լանջաց նորա պղնձի տախտակներ, բարձից ու բազկաց վրայ պահպանակ, մէջքը գօտեւորեալ, ձախ ազդեր վրայ երկսայրի, աջ ձեռքը նիզակ, ձախը վահան, և ընտիր ընտիրներ յաջմէ և յահեկէ նորա։ Հայկ տեսնելով զԲէլ և յաջ և ի ձախ կողման նորա ընտիր մարդիկ կուռ վառեալ՝ զԱրմենակ և եղբայրներն յաջմէ, իսկ Կադմոս և միւս որդիներէն ուրիշ երկուք ձախմէ դնելով, վասն զի կորովիք էին յաղեղն և ի սուսեր՝ ինք անցաւ յառաջ, և զկնի իւր դնելով մնացեալ զօրքը երեքանկիւնի ձևով՝ սկսաւ հանդարտ յառաջ խաղալ։

Երկու կողման հսկայք իրարու մօտ հասնելով՝ ահագին դղրդմամբ սկսան շահատակել, այնպէս որ յահ և ի տագնապ արկանէին զիրեարս։ Երկու կողման հսկաներէն ոչ սակաւք, յաղթանդամ մարդիկ, սրոյ բերնի պատահելով յերկիր կը տապալէին, և պատերազմն երկուստեք կը մնար անորոշ։ Արքային տիտանեան տեսնելով այս անակնունելի դիպուածը՝ զարհուրեցաւ, և դարձեալ ելաւ ի բլուրն ուստի իջած էր. քանզի խորհեցաւ ամբոխին մէջ ամրանալ մինչև ի հասանել բոլոր զօրուն, որպէս զի նորէն ճակատ կազմէր։ Աղեղնաւորն Հայկ իմանալով զայս՝ յառաջ կերթայ, մօտ կը հասնի թագաւորին, պնդով կը քաշէ լայնալիճը (աղեղը), հանդիպեցուցանէ զերեքթևեանն (նետը) (Բելայ) կրծից տախտակին, այնպէս որ կռնակէն թափանցելով սլաքը՝ գետին կ՚իյնայ, և այսպէս հպարտացեալն Բէլ գետին թաւալելով հոգին կը փչէ։ Իսկ զօրքը տեսնելով զայս ահագին գործ քաջութեան՝ դարձնելով զերեսս իւրեանց փախան»։

«Զայսմանէ այսչափ բաւական է, ասէ Խորենացին։ Բայց կռուին տեղը դաստակերտ շինելով (Հայկ)՝ կոչեց Հայք ի յիշատակ յաղթութեան իւրոյ, և այս պատճառաւ գաւառը հիմա կը կոչուի Հայոց ձոր. իսկ բլուրն ուր քաջ մարտիկներովն ինկաւ Բէլ՝ անուանեց Հայկ Գերեզմանս, որ հիմա Գերեզմանք կը կոչուի։ Բայց Հայկ դեղերով պատեց Բելայ դիակը, և հրամայեց տանել Հարք և բարձր տեղ մը թաղել ի տեսիլ կանանց և որդւոց։ Իսկ երկիր մեր յանուն նախնւոյն մերոյ Հայկայ կը կոչուի Հայք»։

Եւ յառաջ մատուցեալ զբանս իւր (Մար Իբաս) ասէ. Ի հաստատել տիտանեանն Բելայ զթագաւորութիւնն իւր առ ամենեսեան՝ առաքէ ի կողմն հիւսիսոյ զմի ոմն յորդւոց իւրոց առ Հայկ արամբք հաւատարմօք, զալ նմա ի հնազանդութիւն և կեալ խաղաղութեամբ։ Բնակեցեր, ասէ, ի մէջ ցրտութեան սառնամանեաց. այլ ջեռուցեալ մեղկեա զցրտութիւն սառուցեալ քո հպարտացեալ բարուցդ, և հնազանդեալ ինձ՝ կեաց ի հանդարտութեան, ուր հաճոյ է քեզ յերկրիս իմում բնակութեան։ Եւ ի բաց դարձուցեալ Հայկայ զպատգամաւորսն Բելայ՝ խստութեամբ պատասխանեաց։ Դառնայ առաքեալն անդրէն ի Բաբելոն։

Ապա զօրաժողով լինի ի վերայ նորա տիտանեանն Բէլ ամբոխիւ հետևակ զօրաց, գայ հասանէ ի հիւսիսի յերկիրն Արարատայ, մերձ ի տունն Կադմեայ։ Փախստական լինի Կադմոս առ Հայկ, քաջ ընթացիկս առաջի իւր առաքէ. Գիտեա, ասէ, ով մեծդ դիւցազանց, զի դիմեալ գայ ի վերայ քո Բէլ յաւերժիւք քաջօք և երկայնադիզօք հասակօք սկայիւք մրցողօք։ Եւ իմացեալ իմ զմերձ լինելն նորա ի տուն իմ՝ փախեայ և գամ աւասիկ տագնապաւ։ Արդ աճապարեա խորհել որ ինչ գործելոց ես։

Իսկ Բէլն յանդուգն և անճոռնի զօրութեամբ ամբոխին, որպէս յորձան ինչ սաստիկ ընդ զառ ի վայր հեղեալ՝ փութայր հասանել ի սահմանս բնակութեան Հայկին, ի սիրտ և ի մարմին վստահացեալ արանց զօրաւորաց։ Աստ ուշիմ և խոհեմ սկայն, քաջագանգուրն և խայտակն, աճապարեալ հաւաքէ զորդիս իւր և զթոռունս, արս քաջս և աղեղնաւորս թուով յոյժ նուազունս, և զայլս ևս որ ընդ իւրով ձեռամբ, հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրքն, մանունս ունելով ձկունս յինքեան։ Եւ կոչեցեալ զզօրս իւր՝ ասէ ցնոսա. Ելանելն մեր հանդէպ ամբոխին Բելայ՝ դիպեալ ջանասցուք տեղւոյն ուր անցեալ կայ ի մէջ խուռն քաջացն Բէլ։ Զի կամ մեռցուք, և աղխ մեր ի ծառայութիւն Բելայ կացցէ, և կամ զաջողութիւն ձեռանց մերոց ի նա ցուցեալ՝ ցրուեսցի ամբոխն և մեք եղիցուք յաղթութիւն ստացեալք։

Եւ յառաջ կոյս անցեալ բովանդակ ասպարէզս՝ հասանեն ի միջոց ինչ դաշտաձև լերանց բարձրագունից, և յաջմէ ջուրցն հոսանաց ի բարձրաւանդակաւն կուռ կալով ի տեղւոջ։ Ի վեր զերեսս ամբարձեալ՝ երևեցաւ նոցա բազմութիւն անկարգ հրոսակի ամբոխին Բելայ ցան և ցիր յանդուգն յարձակմամբ ընդ երեսս երկրին սուրալով. իսկ Բէլ յեց և հանդարտ ամբոխիւ մեծաւ ի ձախմէ ջուրցն ի վերայ ստոյ միոյ իբրև ի դիտանոցի։ Ծանեաւ Հայկ զխումբ վառելոյ ջոկատին, յորում Բէլ առաջի ամբոխին եկեալ հասեալ ընտրիւք և վառելովք ոմամբք. և երկար միջոց ճանապարհի ընդ նա և ընդ ամբոխն։ Եւ ինքն գլխանոց ագուցեալ երկաթի, նշանաւորօք վերջօք, և տախտակս պղնձիս թիկանց և լանջաց, և պահպանակս բարձից և բազկաց, գօտեօրեալ զմէջսն, և յահեկէ զատինն երկսայրի, և նիզակն արի ի ձեռին իւրում աջոյ, և յահեկումն վահան, և ընտիրքն յաջմէ և ի ձախմէ։ Եւ տեսեալ զտիտանեանն կուռ վառեալ, և զարս ընտիրս ընդ նմա աջինս և ահեկինս՝ կարգէ զԱրմենակ երկու եղբարբք ընդ աջմէ, և զԿադմոս և զայլս երկուս յորդւոց իւրոց ի ձախմէ, զի արք կորովիք էին յաղեղն և ի սուսեր, և ինքն առաջի, և զայլս հրոսակին զկնի իւր կարգեաց, երեքանկիւնի իմն կարգեալ ձևով, հանդարտ յառաջ մատուցանելով։

*Եւ հասեալ երկոցունց կողմանց սկայիցն ի միմեանս՝ ահագին դղրդիւն ի վերայ երկրի առնէին շահատակելովն, և ահս պակուցանողս տարազուք յարձակմանցն զմիմեամբք արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանց սկայիցն արք յաղթանդամք բերանոյ սրոյ դիպեալք՝ տապալ յերկիր կործանէին, և մարտն յերկոցունց կողմանց մնայր անպարտելի։ Զայսպիսի անակնունելի դիպուած տարակուսանաց տեսեալ արքային տիտանեան՝ զարհուրեցաւ, և ի նոյն բլուր ուստի էջն՝ վերջոտնեալ ելանէ. քանզի խորհէր ի միջոցի ամրանալ ամբոխին, մինչև հասցէ բովանդակ զօրն, զի միւսանգամ ճակատ յօրինեսցէ։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ՝ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ յարքայն, լի քարշէ պինդ զլայնալիճն, դիպուցանէ զերեքթևեանն կրծից տախտակին, և չեչտ ընդ մէջ թիկանցն թափանցիկ լեալ՝ յերկիր անկանի սլաքն. և այսպէս ճոխացեալն տիտանեան կործանի յերկիր զարկուցեալ, և փչէ զոգին։ Իսկ ամբոխն տեսեալ զայսպիսի ահագին գործ քաջութեանն՝ փախեան իւրաքանչիւր դէպ երեսաց իւրեանց։ Եւ վասն այսորիկ այսչափ բաւական լիցի։ Բայց զտեղի ճակատուն շինէ (Հայկ) դաստակերտ և անուն կոչէ Հայք, վասն յաղթութեան պատերազմին. այսորիկ աղագաւ և գաւառն այժմ անուանի Հայոց Ձոր։ Իսկ բլուրն, ուր քաջամարտիկօքն անկաւ Բէլ՝ անուանեաց Հայկ Գերեզմանս, որ այժմ ասին Գերեզմանք։ Բայց զդիակն Բելայ պաճուճեալ խմն դեղովք՝ ասէ, հրամայէ Հայկ տանել ի Հարք, և թաղել ի բարձրաւանդակ տեղւոջ, ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց։ Իսկ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։*

**9** «Յետ այսորիկ—ասէ Խորենացին—ուրիշ շատ բան կը պատմուի այն (Մար Իբասայ) մատենին մէջ. բայց ես կ'առնում միայն՝ ինչ որ պէտք է իմ հաւաքմանս։ Հայկ, ասէ (Մար Իբաս), Կադմոսի շատ բան տուաւ աւարէն, յընդոծնաց իւրոց ևս երևելի մարդիկ, և հրամայելով նմա երթալ իւր առաջին բնակութեան տեղը՝ ինք գնաց Հարք, և շատ տարիներ ապրելով մեռաւ, երէց որդւոյն Արմենակայ յանձնելով բոլոր ազգը։

Արմենակ իւր եղբայրներէն երկուքը, Խոռ և Մանաւազ և Մանաւազայ որդին Բազ բոլոր աղխիւ իւրեանց կը թողու Հարք։ Մանաւազ կը ժառանգէ Հարք. որդի նորա Բազ՝ աղի (Վանայ) ծովուն հիւսիսային արևմտեան եզրը, գաւառն ու ծովը յիւր անուն (Բզնունիք) անուանելով։ Իսկ Խոռ (ծովուն) հիւսիսային կողմը կը բազմանայ և կը ծաղկեցնէ երկիրը շինութեամբք։

Արմենակ առնլով բոլոր բազմութիւնը՝ կ'երթայ դէպ ի հիւսիսային արևելք, և կ'իջնէ բարձր լեռներէ պարսպեալ խոր դաշտավայր մի, ընդ որ յարևմտից կ'անցնին կարկաչաձայն գետեր։ Դաշտը դէպ արևելք երկայնելով կ'երթայ. լերանց ստորոտէն ևս ոչ սակաւ ականակիտ աղբերք բխելով կը ժողվուին և փոքր գետեր ձևանալով առ եզերբ դաշտին առ ստորոտով լերանց կը հոսեն հեզասահ։ Հարաւային լեռն սպիտակ գագաթամբն ի սկզ-

բան չետակ դէպ ի վեր բարձրանալով, յետոյ սակաւ կը ծռի և երբև թէ ծերացեալ կ'երևի միւս երիտասարդ լերանց մէջ։ Այս լեռը դաշտին մէջ կը բնակի Արմենակ, դաշտին հիւսիսային կողման մէկ մասը կը շէնցնէ, ինչպէս նաև լերան ստորոտը նոյնպէս հիւսիսէն, և լեռը կ'անուանէ յիւր անուն Արագած, և կալուածներն՝ Ոտն Արագածու։ Այս Արմենակ յետ բազում ամաց ծնաւ զԱրմայիս, և յետոյ շատ տարիներ ապրելով մեռաւ։

**10**. Արմայիս կը շինէ իւր տուն բնակութեան առ եզերբ գետոյն ի վերայ բլրոյ և յիւր անուն կը կոչէ Արմաւիր և զգետն յանուն թոռին իւրոյ Արաստայ՝ Երասխ։ Իսկ զորդին Շարա, յոլովածին և շատակեր՝ բոլոր աղխիւ կը ղրկէ մօտաւոր դաշտ մը, բարի և արգաւանդ, ուր ոչ սակաւ գետեր կը քալեն, Արագած կոչուած լերան ետին հիւսիսային կողմը։ Ասի թէ այն գաւառը Շարայի անուամբ կոչեցաւ Շիրակ»։ Խորենացին ի հաստատութիւն Շարայի շատակերութեան և Շիրակայ բեղմնաւորութեան՝ կը յիշէ գեղջկական առակ մը. «Թէ քո Շարայի որկորն է՝ մեր Շիրակայ ամբարքն չեն»։ «Այս Արմայիս, ասէ Խորենացին (ի Մար Իբասայ անելով), յետ կեցլոյ շատ տարիներ՝ ծնաւ իւր որդին Ամասիա»։

**11**. Ամասիա Արմաւիր բնակելով՝ յետ ամաց կը ծնանի զԳեղամ, եւ Գեղամայ զՓառոխ և զՑոլակ։ Յետոյ գետն ի վեր երթալով Հարաւային լերան մօտ՝ կը շինէ հոն ի խորշ մի լեռնոտին մեծամեծ ծախիւք երկու տուն. մին դէպ արևելք, լերան ստորոտէն բղխող աղբերականց մօտ, իսկ միւսը նոյն տան արևմտեան կողմը, հետի գացող մարդու մը ոտիւք իբր կէս օրուան ճամբայ հեռագոյն։ Երկու որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ կու տայ ժառանգութիւն այս տուները, յորս բնակելով սոքա՝ յանուն իւրեանց կոչեցին այն տեղերը—Փառախոտ և Ցոլակերտ։ Ամասիա յիւր անուն Մասիս կոչելով լեռը՝ դարձաւ յԱրմաւիր ուր և մեռաւ։

**12**. Գեղամ յետ ամաց զՀարմայ զոր ծնած էր յԱրմաւիր, թողլով անդ՝ գնաց դէպ ի միւս լեառն, որ հիւսիսային արևելեան կողմն էր ծովակի մը եզրը։ Հարմայ ծովակին եզրը կը զարդարէ շինիւք և բնակչօք, լեռը կ'անուանէ յիւր անուն Գեղ և շէնն ու ծովակը՝ Գեղաքունի։ Հոն ծնաւ Գեղամ իւր որդին Սիսակ, սէգ, անձնեայ, բարեգեղ, կորովաբան և գեղեցկաղեղ։ Ցընչից իւրոց մեծ մաս մը և շատ ծառաներ տալով Գեղամ Սիսակայ՝ հատանէ նմա ժառանգութեան սահման ծովակէն դէպ արևելք մինչև դաշտ մը։ Երասխ գետ անձաւները կտրելով նեղ տեղերէ կ'անցնի, և ահագին դղըրդմամբ կ'իջնէ այս դաշտը։ Հոն բնակելով Սիսակ՝ շինութեամբք կը զարդարէ երկիրը, զոր յիւր անուն կը կոչէ Սիւնիք։ Պարսք, ասէ

Խորենացին, աւելի որոշ կ՚անուանեն—Սիսական։ Իսկ Գեղամ վերայիշեալ դաշտին մէջ առ ստորոտով նոյն լերան յամուր ձորակի ձեւակերտ շինելով՝ կը կոչէ յիւր անուն Գեղամի, որ յետոյ ի թոռանէ նորա Գառնկայ կոչեցաւ Գառնի։ Գեղամ մեռաւ, պատուիրելով որդւոյ իւրում Հարմայի բնակել յԱրմաւիր։ Այս Հարմայի որդին էր Արամ»։

Բազում ինչ զկնի այսորիկ պատմի ի մատենին. այլ մեք որ ինչ պիտոյն մերոյ հաւաքմանս է շարեսցուք։ Զկնի այսորիկ դառնալ ասէ (Մար Իբաս) Հայկայ ի նոյն տեղի բնակութեան, և Կադմեայ թոռին իւրում բազում ինչ յանկածէ պատերազմին պարգևեաց, և յիւրոց ընդոծնաց արս անուանիս։ Հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել նմա զառաջնոյ իւրոյ տանն, և ինքն երթեալ դադարէ յանուանեալ տեղին Հարք։ Սա կեցեալ ամս ծնաւ զԱրմենակ ի Բաբելոնի, որպէս վերագոյն ասացաք։ Յետ որոյ կեցեալ և այլ ևս ամս ոչ սակաւս մեռանի, յանձն առնելով զբովանդակ ազգն Արմենակայ որդւոյ իւրոյ։ Իսկ Նորա թողեալ զերկուս յեղբարց.իւրոց, զԽոռ և զՄանաւազ ամենայն աղխիւն իւրեանց ի կոչեցեալն Հարք, և զորդի Մանաւազայ զԲազ. յորոց Մանաւազ ժառանգէ զՀարք, իսկ որդի նորա Բազ՝ յարեւմտից հիւսիսոյ զեզր ծովուն աղւոյ, և զգաւառն և զծովն անուանէ իւրով անուամբն։ . . . Իսկ Խոռն ի կողմանս հիւսիսոյ (ծովուն) բազմանայ, կարգէ զշէնս իւր։ . . . Իսկ Արմենակայ առեալ զամենայն բազմութիւնն խաղայ յարեւելս հիւսիսոյ, և երթեալ իջանէ ի խորին դաշտավայրի մի ի բարձրագագաթանց պարսպեալ լերանց, գետս կարկաջասահս յարեւմտից ընդ մէջ անցանելով, և զդաշտն արևելից իմն գոգցես իբր որսայսեալ, ձիգ յարեգակն կոյս զերկայնութիւն պարզեալ, և ստորոտովք լերանցն բազում ականակիտ բղխեալ աղբիւրք, որ գետոց հաւաքումն եղեալ՝ հեզաբար առ սահմանօք նոցա, ծնիւք լերամբք և եզերօք դաշտին, պատանիք ոմանք իբր երիտասարդուհեօք ճեմիցին։ Այլ հարաւայինն արեգակնաճեմ լեառն, սպիտակափառ ունելով գագաթն, ուղղորդ ի յերկրէ բուսեալ, երեքօրէիւ քաջագօտւոյ առնն շրջապատեալ ճանապարհաւ, և առ փոքր փոքր ի չեչտումն անկեալ, ծեր ոմն արդարև լեառն ի մէջ երիտասարդացեալ լերանց։ Յայսմ խորութեան դաշտի բնակեալ Արմենակայ՝ շինէ զմասն ինչ ի հիւսիսոյ կողմանէ դաշտին և զոտն լերինն ի նոյն կողմանէ, և զլեառն անուանէ յանկագոյն յիւր անուն Արագած, և զկալուածսն՝ Ոտն Արագածու։

Այս Արմենակ կեցեալ ամս՝ ծնաւ զԱրմայիս, և յետոյ կեցեալ ամս շատ՝ մեռաւ։ Իսկ որդի նորա Արմայիս շինէ իւր տուն բնակութեան ի վերայ ոստոյ միոյ առ եզերբ գետոյն, և անուանէ զնա յիւր անուն Արմաւիր, և զանուն գետոյն յանուն թոռին իւրոյ Արաստայ՝ Երասխ։ Եւ զորդին իւր զՇարայ, զյոլովածին և զշատակեր, առաքէ ամենայն աղխիւ իւրով ի դաշտ մի մօտաւոր, արդաւանդ և բարի, յորում գնան ջուրք ոչ սակաւք ի թիկունս հիւսիսոյ լերինն, որ անուանեցաւ Արագած, յորոյ անուն և զգաւառն ասեն անուանել Շիրակ։ Վասն որոյ արդարանալ թուի առասպելին, որ ասի ի մէջ գեղջկաց. Թէ քո Շարայի որկորն է՝ ասեն, մեր Շիրակայ ամբարքն չեն։ Այս Արմայիս կեցեալ ամս՝ ծնանի զորդի իւր զԱմասիա, ի վերայ որոյ կեցեալ այլ ևս ամս՝ մեռաւ։

Ամասիա բնակեալ յԱրմաւիր յետ ամաց ծնանի զԳեղամ, և յետ Գեղամայ զՓառախ արի և զՑոլակ. և յետ ծնանելոյ զսոսա՝ անցանէ զգետովն մերձ ի լեառնն հարաւոյ, և շինէ անդ առ խորշիւք լեռնոտինն մեծապէս ծախիւք երկուս տունս, զմին յարևելս կոյս, մօտ յակունս աղբերցն որ առ ստորոտով լերինն ելանեն. իսկ զմիւսն՝ յարևմուտս կոյս նորին տանն, բացագոյն իբր մեծօր հասարակօրոյ միոյ հետևակագնացի առնն ճանապարհի։ Եւ ետ զնոսա ի ժառանգութիւն երկուց որդւոց իւրոց, արւոյն Փառոխի և կայտառին Ցոլակայ. յորս բնակեալ՝ յիւրեանց անուն զտեղիսն կոչեցին, ի Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։ Բայց զլեառնն Ամասիա անուանէ իւր անուամբ Մասիս, և ինքն դարձեալ յԱրմաւիր՝ եկաց ամս սակաւս և մեռաւ։

Իսկ Գեղամ յետ ամաց անցանելոյ ծնաւ զՀարմայ յԱրմաւիր. և թողեալ զՀարմայ յԱրմաւիր հանդերձ որովք բնակէրն՝ ինքն գնաց զմիւս լերամբն արևելեան հիւսիսոյ յեզր ծովակի միոյ։ Շինէ զեզր ծովակին և թողու անդ բնակիչս. և յիւր անուն և սա զլեառնն անուանէ Գեղ, և զշէնսն՝ Գեղաքունի, որով կոչի և ծովն։ Աստ ծնաւ զորդի իւր զՍիսակ, զայր սէգ և անձնեայ, բարեգեղ, կորովաբան և գեղեցկաղեղն։ Սմա զմեծ մասն յընչից իւրոց տուեալ, և ծառայս անձինս բազումս՝ սահմանս հատանէ նմա ժառանգութեան ի ծովէն ընդ արևելս մինչև ցդաշտ մի, որ գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխոմաձորս և նեղս, ահագին դղրդընդմամբ իջանէ ի դաշտն։ Աստ բնակեալ Սիսակ՝ լնու շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ, և զաշխարհն կոչէ իւրով անուամբ Սիւնիք. այլ Պարսք յստակագոյն իսկ Սիսական կոչեն։

Բայց ինքն Գեղամ դառնայ անդրէն ի դաշտ անդր, և առ ոտամբ նորին լերինն ի ձորակի մի ամրոջ շինէ ձեռակերտ մի և կոչէ զանուն նորա Գեղամի, որ յետոյ ի Գառնկայ թոռանէ նորա անուանեցաւ Գառնի։ Այս Գեղամ, որպէս ասացաք՝ յետ ամաց կենաց իւրոց ծնաւ զՀարմայ. յետ որոյ և այլ ևս, և մեռաւ։ Եւ հրամայեաց որդւոյ իւրում Հարմայ բնակել յԱրմաւիր։ Իսկ Հարմայ կեցեալ ամս՝ ծնաւ զԱրամ։։

**13.** Խորենացին յետ նկարագրելոյ այսպէս զգաղթականութիւնսն և զշինութիւնս Հայկայ և յաջորդաց նորա մինչև Արամ՝ Արամայ գործերը կ'սկսի պատմել։ Արամ, ասէ Խորենացին, վասն զի աշխատասէր և հայրենասէր էր, ինչպէս կը ցուցնէ նոյն պատմագիրը (Մար Իբաս)՝ լաւ կը համարէր հայրենեաց համար մեռնիլ, քան թողուլ օտարածնաց կոխել իւր երկրին սահմանները և իւր համազգեաց վրայ տիրել։

Այս Արամ, ասէ (Մար Իբաս), քիչ տարի յառաջ քան զտիրելն Նինոսի Ասորեստանեայց և Նինուէի՝ շրջակայ ազգերէն նեղուելով ժողվեց ընտանի մարդոց բազմութիւն մը, որ աղեղ և նիզակ գործածել քաջ գիտէին, թուով իբրև յիսուն հազար, բոլորը նորատի և ուժեղ։ Արամ այս զօրքով կ'երթայ Հայոց սահմանին վրայ մար երիտասարդաց դէմ, որոց առաջնորդ էր մար ոմն Նիւքար

անուն Հպարտ և պատերազմասէր, որպէս ասէ նոյն պատմագիր (Մար Իբաս)։ Նիւքար ոտնակոխ առնելով Հայաստանի սահմանները ծառայեցուց երկու տարի։ Ի վերայ սորա յարձակելով Արամ յանկարծ յառաջ քան զծագել արեգական՝ զարկաւ բոլոր բազմութիւնը, և զՆիւքար բռնելով բերաւ Արմաւիր, և հոն պարսպին աշտարակին ծայրը ճակատէն երկաթի ցցով պատին գամել հրամայեց ի տեսիլ անցորդաց և հոն եկող մարդոց, և զերկիր նորա մինչև Զարասպ կոչուած լեռը նուաճեց մինչև ի թագաւորելն Նինոսի Ասորեստանի և Նինուէի։

Իսկ Նինոս որ թագաւորեց ի Նինուէ, գիտելով յաւանդութենէ, թէ նախնին իւր Բէլ սպանուած էր ի Հայկայ՝ ունէր ոխ ի մտի և տարիներով կ՚սպասէր պատեհութիւն գտնել, Հայկայ բոլոր սերունդը ջնջել։ Բայց վախնալով (յԱրամայ), թէ թերևս վնաս հասնի իւր թագաւորութեան՝ ծածկեց զչարութիւն իւր, և հրամայեց Արամայ անկասկած վարել զիշխանութիւն իւր, նաև ետ նմա համարձակութիւն մարգարտէ վարսակալ կապել և երկրորդ նորա կոչուիլ»։

Սա (Արամ) այր աշխատասէր և հայրենասէր եղեալ, որպէս ցուցանէ նոյն պատմագիր՝ լաւ համարէր զմեռանելն ի վերայ հայրենեացն, քան թէ տեսանել զորդիս օտարածնաց կոխելով զսահմանս հայրենիս, և հարազատից արեան նորա տիրել արանց օտարածնաց։

Այս Արամ սակաւուք ամօք յառաջ քան զտիրելն Նինոսի Ասորեստանեայց և Նինուէի, նեղեալ յազգացն որ շուրջ զիւրեաւ՝ և ժողովէ զկազմութիւն ընտանի արանց քաջաց և աղեղնաւորաց, և որ ի տէգ նիզակի կամակարողք, նորատիք և հարուստք յոյժ և յաջողաձեռնութիւն իսկ և երեսաւորք, որ ի սիրտ և ի պատրաստութիւն, իբր թէ բիւրս հինգ։ Պատահէ Մեդացւոցն երիտասարդաց, որոց առաջնորդէր Նիւքար ոմն ասացեալ մադէս, այր հպարտ և պատերազմասէր, որպէս ցուցանէ նոյն ինքն պատմագիրն, յեղերս սահմանացն Հայոց։ Որոց միանգամ քուշանաբար հինիւ սմբակակոխ արարեալ զսահմանս Հայոց՝ ծառայեցոյց ամս երկուս։ Որում յանկարծօրէն ի վերայ հասեալ Արամ յառաջ քան զծագել արեգականն՝ սատակեաց զբազմութիւն ամբոխիցն, և զնոյն ինքն զՆիւքար կոչեցեալ մադէս ձերբակալ արարեալ ածէ յԱրմաւիր, և անդ ուրեմն ի ծայրս աշտարակի պարսպին ցից վարեալ երկաթի ընդ ճակատն յորմն վարսել հրամայէ, ի տեսիլ անցաւորաց և ամենայն եկելոց անդր. և զաշխարհն նորա մինչև ցլեառն անուանեալ Զարասպ ի ծառայութիւն հարկի կալաւ մինչև ցթագաւորութիւնն Նինոսի ի վերայ Ասորեստանի և Նինուէի։

Իսկ Նինոս թագաւորեալ ի Նինուէ, յիշատակ քինու զնախնւոյն իւրոյ զԲելայ ունէր ի մտի, ի զրուցաց ուսեալ. և զայս խորհէր հատուցանել յամս ձիգս, նկատել որսալ զյաջողութիւն աւուրց, բառնալ ջնջել զամենայն ճետ սերմանեալ յարանց քաջին Հայկայ։ Այլ երկիւղ կասկածանաց խարդաւանակ լինելոյ իւրոյ թագաւորութեանն զայսպիսիս համարեալ իրագործու-

թիւն՝ ծածկէ զչարութիւնն, և հրամայէ նմա (Արամայ) զայն իշխանութիւն անկասկածաբար ունել, և համարձակութիւն տայ նմա վարսակալ ածել մարգարտէ և երկրորդ նորա կոչել։

**14.** Խորենացին յետ պատմելոյ զպատերազմն Արամայ Հայաստանի արևելեան կողմը Մարաց դէմ՝ ասէ. «Համառօտիւ պատմենք նաև Արամայ կռիւներն Ասորեստանի դէմ և Հայաստանի արևմտեան կողմը, ինչպէս որ նոյն (Մար Իբասայ) գիրքին մէջ կը պատմուի։ Եւ կը շարունակէ այսպէս.

Արամ յետ ի գլուխ հանելոյ զկռիւն ընդդէմ արևելեայց՝ նոյն զօրութեամբ կը քալէ Ասորեստանի (թերևս կամի ասել Ասորւոց) կողմը։ Հոն կը գտնէ ապականիչ ումն երկրին իւրոյ չորս բիւր հետևակ զօրօք և հինգ հազար հեծելովք, հսկաներու ցեղէն Բարշամ անուն, որ խիստ հարկերով կը նեղէր և անապատ դարձուցած էր շրջակայ տեղերը։ Ընդ նմա պատերազմելով Արամ՝ սպան զբազումս ի զօրաց նորա, և զմասն մի ի նոցանէ արար հալածական անդր քան զլերինս Կորդուաց, մինչև ի դաշտն Ասորեստանի։ Իսկ Բարշամ Արամայ զինակիրներուն պատահելով սպանաւ։ Արամ Ասորեստանի դաշտին մեծ մասն արար հարկատու երկայն ժամանակ։

Պատմենք արդ ինչ որ գործեց Արամ յարևմուտս ընդդէմ Տիտանեանց։ Արամ յառաջին զօրս իւր յաւելլով չորս բիւր հետևակ և երկու հազար հեծեալ՝ եկաւ Կապադովկացւոց կողմը, ի տեղին որ այժմ Կեսարիա կոչի։ Եւ որովհետև արևելեան և հարաւային սահմանները նուաճելով յանձնած էր երկուց ցեղից, այսինքն արևելեանը Սիսակեանց, և Ասորեստանի կողմը Կադմեայ տան՝ այն կողմերուն համար երկիւղ չունէր, ուստի և երկայն ժամանակ մնալով յարևմուտս՝ կը պատահի Տիտանեաններէն Պայապիս անուն ումեմն (որդւոյ) Քաղեայ, որ բռնած էր զերկիրն ի մէջ երկուց մեծ ծովուց, Պոնտոսի և Ովկիանու (Սև ծովուն և Միջերկրականին, այն է զՓոքրն Ասիա)։ Ընդ սմա կը կռուի Արամ, և Պայապիս յաղթուելով կը փախչի Ասիական ծովուն կղզիներէն մին։ Իսկ Արամ իւր ազգէն Մշակ անուն զոմն թողլով անդ տասն հազարաւ՝ ինքն դառնայ ի Հայս։ Բայց կը հրամայէ այն երկրին բնակչաց ուսանել հայերէն, այս պատճառաւ այն երկիրը կը կոչուի Պրոտին Արմենիան, որ կը նշանակէ Առաջին Հայք։ Մշակ հոն փոքր պարսպապատ քաղաք շինելով՝ յիւր անուն կը կոչէ Մշակ, զոր տեղացիք չկարելով հնչել ուղիղ՝ Մաժաք կ'անուանէին։ Արամ այն տեղերէն մինչև իւր սահմանը բնակչօք կը լնու շատ անբնակ

երկիրներ, որ Երկրորդ, Երրորդ, Նաև Չորրորդ Հայք անուանեցան։ Այնպէս անուանի եղաւ այս Արամ՝ որ ուրիշ ազգեր զերկիր մեր յանուն նորա (Արմենիա կամ Արմնիք) կոչեցին։

Արամ տարիներ ապրելով՝ ծնաւ զԱրայ, և յետոյ ևս շատ տարիներ ապրելով մեռաւ։

Կարգեսցուք դոյզն յիշատակօք բանից և որ ինչ զկնի այսորիկ սորա (Արամայ) գործք քաջութեան պատմին յարեւմուտս ի նոյն մատենի, և որ ընդ Ասորեստանեայս կռիւն։ Նոյն այս Արամ յետ վճարելոյ հակառոյն որ ընդ արևելեայս՝ խաղայ նոյն զօրութեամբ զկողմամբք Ասորեստանի. գտանէ և անդ զոմն ապականիչ երկրին իւրոյ՝ չորեք բիւրովք վառելովք հետևակօք և հինգ հազար հեծելազօրու, Բարշամ անուն, յազգէ սկայիցն. որոյ սաստկագոյն նեղեալ հարկաց խստութեամբ՝ անապատ զբովանդակ շրջակայսն իւր առնէր։ Սմա հակառակ պատերազմի ի գիմի հարեալ Արամ՝ հալածական ընդ մէջ Կորդուաց ի դաշտն Ասորեստանի արկանէ, զբազումս ի նոցանէ սատակելով. իսկ Բարշամ առաջի զինակրացն նորա պատահեալ մեռանի. . . ։ Զմեծ մասն դաշտացն Ասորեստանի կալաւ ի ծառայութեան հարկի Արամ բազում ժամանակս։ Այլ որ ինչ յարեւմուտս կայր ընդ Տիտանեանցն է սորա գործ քաջութեան՝ առնել կռիւ մեծ առաջի։ Ասա յարեւմուտս չարժեալ, ի վերայ առաջնոյն չորեք բիւրու հետևակ զօրու և երկու հազար հեծելովք՝ հասանէ ի կողմանս Կապադովկացւոց, ի տեղի մի որ այժմ ասի Կեսարիա։ Եւ քանզի զարևելեայն և զհարաւայինն նուաճեալ, ի ձեռն յանձնեալ էր երկուց ցեղիցս այսոցիկ, Սիսակեանցն՝ զարևելս, և որք ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանին՝ ոչինչ այնուհետև կասկած չփոթից ուստեք ունէր։ Վասնորոյ յերկարեալ ժամանակս լինել յարևմուտս՝ պատահէ նմա Պայապիս Քաղեայ տիտանեան՝ պատերազմաւ, որ բռնացեալ ունէր զմիջոց երկուց ծովուց մեծամեծաց, զՊոնտոսն և զՈվկիանոս։ Որում ի դիմի հարեալ վանէ, փախստական արկանելով ի կղզի ինչ ասիական ծովուն։ Եւ ինքն թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ, և բիւր մի ի զօրաց իւրոց ի վերայ աշխարհին՝ և ինքն դառնայ ի Հայս։ Բայց հրաման տայ բնակչաց աշխարհին ուսանել զխօսս և զլեզուս հայկական. վասն որոյ մինչև ցայս օր ժամանակի անուանեն զկղիմայն զայն Պռոտին Արմենիան, որ թարգմանի Առաջին Հայք։ Եւ զգաստակերտն զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ, փոքրագունիւք պարսպեալ որմովք՝ անուանէին հինք աշխարհին Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել...։ Ըստ նմին օրինակի ի տեղեացն այնոցիկ մինչև ցբուն իւր սահմանսն՝ զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ և Երրորդ անուանեցան Հայք, այլև Չորրորդ։ Այսպէս հզօր և անուանի եղեալ՝ յանուն սորա մինչև ցայսօր, որպէս ամենեցուն յայտնի է, որ շուրջ զմեօք ազգք զաշխարհս մեր անուանեն։ Բազում և այլ գործք քաջութեան ի նմանէ գտանին կատարեալ, այլ մեզ բաւական լիցի ասացեալս։ . . . .

Արամ յետ ամի կենաց իւրոց ծնաւ զԱրայն. զկնի որոց և այլս բազումս կեցեալ ամաց՝ մեռաւ»

**15.** Արայի գալով՝ Խորենացին կը պատմէ զայս օրինակ. «Արայ

սակաւ ամօք յառաջ քան զվախճանելն Նինոսի խնամակալեց իւր հայրենեաց, ընդունելով Նինոսէ միեւնոյն շնորհքը՝ զոր ընդունած էր Հայր նորա Արամ։ Բայց վաւաշոտն Շամիրամ շատ տարիներէ հետէ լուեալ զգեղեցկութենէ Արայի՝ կը ցանկար հասնել իւր փափաքին, բայց յայտնի ինչ առնել ոչ համարձակէր։ Իսկ յետ վախճանելոյ Նինոսի կամ փախչելոյ նորա ի Կրետէ, համարձակ պատուելով զախտ իւր՝ ընծաներով առաքէ հրեշտակ առ Արայն գեղեցիկ, բազում աղաչանօք և պարգևներու խոստմամբ՝ գալ ի Նինուէ, և կամ ամուսնանալով ընդ Շամիրամայ՝ թագաւորել բոլոր Ասորեստանի, և կամ կատարելով զկամս Շամիրամայ՝ մեծ պարգեւով և խաղաղութեամբ դառնալ ի տեղի իւր։

Յետ առաքելոյ ստէպ պատգամաւորս, Շամիրամ տեսնելով, թէ Արայ ոչ հաւանի՝ սաստիկ բարկանալով կ՚առնու զօր բազում և կու գայ ի Հայս ի վերայ Արայի, բայց ոչ այնչափ սպաննելու, որչափ ողջ բռնել տալու մտօք զԱրայ, առ ի տալ կատարել նմա զցանկութիւն իւր, քանզի առ սաստիկ ցանկական մոլեգնութեանն, երբ կը լսէր զանուն Արայի՝ շամշութեամբ կը վառէր, որպէս թէ զնոյն ինքն զԱրայ կը տեսնէր։ Շամիրամ եկաւ յանուն Արայի Այրարատ կոչուած դաշտը։ Երբ ճակատ պիտի մղուէր՝ պատուիրեց զօրապետներուն ամենայնիւ ջանալ ողջ բռնել զԱրայ. բայց ի կռուին պարտեցան զօրք Արայի, և Արայ սպանաւ Շամիրամայ պատանիներէն։ Յետ յաղթութեանն տիկինը գիակապուտներ կը ղրկէ ի տեղի ճակատուն, դիականց մէջ խնդրել զիւր ըղձալին և զտարփածուն։ Արայ քաջամարտկաց մէջ կը գտնուի մեռեալ և Շամիրամայ ապարանից վերնատունը կը դրուի։

Երբ Հայք նորէն պատերազմի գրգռեցան Շամիրամայ դէմ առ ի պահանջել զվրէժ մահուան Արայի՝ Շամիրամ ասէ ցնոսա. Հրամայեցի աստուածոց իմոց լիզուլ զվէրս Արայի և կենդանացնել։ Արդարև Շամիրամ կը յուսար կենդանացնել զԱրայ իւր վհկական արուեստին դիւթութիւններով, քանզի էր ցնորեալ տռփական ցանկութեամբ։ Բայց երբ նեխեցաւ դիակը՝ հրամայեց ընկենուլ զդին ի վիհ մեծ և ծածկել, և իւր հոմանիներէն զմին ծածուկ զարդարելով՝ այսպէս համբաւ հանեց. Աստուածները լիզելով զԱրայ կենդանացուցին և լցին մեր փափաքը, ուստի այսուհետև ևս առաւել պաշտուելու և փառաւորուելու արժանի են ի մէնջ, իբրև հեշտացուցիչք և կամակատարք։ Եւ նոր պատկեր կանգնելով յանուն դիւաց՝ կը պատուէ մեծապէս զոհիւք, որպէս թէ առ ի ցուցանել ամենեցուն թէ այն աստուածոյն զօրութիւնն էր որ կեն-

գանացոյց զԱրայ։ Այս համբաւը տարածելով բոլոր Հայոց երկրին մէջ՝ դադրեցոյց խռովութիւնը։

Արայ յետ կելոյ ամս բազումս ծնած էր զԿարդոս։

Արայ սակաւ ամօք յառաջ քան զվախճանելն Նինոսի խնամակալեաց իւրոց հայրենեաց, նոյնպիսում շնորհի արժանաւորեալ ի Նինոսէ որպէս և հայր իւր Արամ։ Բայց վաւաշն այն և բոզբորիկն Շամիրամ ի բազում ամաց լուեալ զգեղեցկութենէ նորա՝ ցանկայր հասանել. այլ ոչ ինչ յայտնապէս զայսպիսիս իշխէր գործել։ Իսկ յետ վախճանելոյն կամ փախստական լինելոյ Նինոսի ի Կրետէ, համարձակ պատուելով Շամիրամայ զախտն՝ առաքէ հրեշտակս առ Արայն գեղեցիկ՝ ընծայիւք և պատարագօք, բազում աղաչանօք և խոստմամբ պարգևաց, գալ առ նա ի Նինուէ, կամ առնուլ կնութեան և թագաւորել ի վերայ ամենայնի որոց տիրէր և Նինոս, և կամ կատարել զկամս ցանկութեան նորա և դառնալ մեծաւ պարգևօք և խաղաղութեամբ ի տեղի իւր։

Եւ բազում անգամ երթևեկութիւն հրեշտակագնացութեանն լինելոյ և ոչ հաւանել Արային, ի սաստիկ ցասման լեալ Շամիրամայ՝ ի վախճանի պատգամաւորութեանն առնու զբազմութիւն զօրաց իւրոց և փութայ երթալ հասանել յերկիրն Հայոց ի վերայ Արայի։ Բայց որչափ դիմաց էր նշանակել՝ ոչ այնչափ ինչ ի սպանանել զնա և ի հալածել փութայր, քան թէ ի նուաճել կամ զբռամբ ածել, զի լցցէ զկամս ցանկութեան իւրոյ. զի առ ի յոյժ ցանկական մոլեգնութեան, ի բանսն որ զնմանէ՝ որպէս ի տեսութիւն չամչութեամբ վառեալ էր։ Գայ հասանէ տագնապաւ ի դաշտն Արայի, որ և յանուն նորա անուանեալ Այրարատ։ Եւ ի լինել ճակատուն պատուէր տայր զօրապետաց իւրոց, թէ դէպ լինիցի՝ հնարել ապրեցուցանել զԱրայն։ Իսկ ի լինել մարտին՝ հարկանի զօրն Արայի, մեռանի Արայ ի պատերազմին ի մանկանցն Շամիրամայ։ Դիակապուտս առաքէ տիկինն յետ յաղթութեանն ի տեղի ճակատուն՝ խնդրել ի մէջ դիականցն անկելոց զըղձալին իւր և զտարփածուն։ Գտանեն զԱրայն ի մէջ քաջամարտիկացն, և հրամայէ դնել զնա ի վերնատանն ապարանին։

Իսկ ի գրգռել միւսանգամ զօրացն Հայոց ի մարտ պատերազմի ընդ տիկնոջն Շամիրամայ, քինախնդիր լինել մահուանն Արայի՝ ասէ. Հրամայեցի աստուածոցն իմոց լիզուլ զվէրս նորա, և կենդանասցի։ Միանգամայն և ակն ունէր դիւթութեամբ վհկութեան իրոյ կենդանացուցանել զԱրայ, ցնորեալ ի տռփական ցանկութենէն։ Իսկ իբրև նեխեցաւ դի նորա՝ հրամայեաց ընկենուլ ի վիհ մեծ և ծածկել. զմի ոմն ի հոմանեաց իւրոց զարդարեալ ունելով ի ծածուկ՝ համբաւէ զնմանէ այսպէս. Լիզեալ աստուածոցն զԱրայ և կենդանացուցեալ՝ լցին զփափագ մեր և զհեշտութիւն, վասն որոյ տռաւել յայսմ հետէ պաշտելիք են ի մէնջ և փառաւորեալք, իբրև հեշտացուցիչք և կամակատարք։ Կանգնէ և նոր իմն պատկեր յանուն դիւաց, և մեծապէս զոհիւք պատուէ, ցուցանելով ամենեցուն՝ իբրև թէ այս զօրութիւն աստուածոցն կենդանացուցին զԱրայ։ Եւ այսպէս համբաւեալ զնմանէ ի վերայ երկրիս Հայոց և հաւանեցուցեալ զամենեսեան՝ դադարեցուցանէ զխազմն։

Սա (Արայ) կեցեալ ամս՝ ծնաւ զԿարդոս։

**16.** Յետ այսորիկ Խորենացին սկիզբնէ առնէ պատմել, թէ ինչպէս Շամիրամ Արարատայ դաշտէն գալով դէպ ի հարաւ Վանայ կողմը՝ կը հիանայ ընդ գեղեցկութիւն տեղւոյն, և կու տայ շինել զՎան, և առ եզերբ ծովուն, քարակտուր բլրոյ մը վրայ ամարանոցի համար վասն իւր՝ բերդ, զոր և մանր կը նկարագրէ Խորենացին ԺԶ. գլխոյն մէջ (տես էջ 17—20), և ասէ թէ Շամիրամ միշտ ամառներն այն քաղաքը կու գար, Զրադաշտ անուն մար մը փոխանորդ դնելով Ասորեստանի և Նինուէի։ Յետոյ Շամիրամայ վարքը և մահն յիշելով Մար Իբասայ պատմութիւնն հաւանականագոյն կը համարի, այսինքն թէ Շամիրամ գժտելով ընդ Զրադաշտի, առ որ բոլորովին հաւատացած էր տէրութիւնը՝ պատերազմի կ'ելլէ, և յաղթուելով կը փախչի Հայաստան, ու կ'սպանուի յորդւոյ իւրմէ ի Նինուասայ, որ կը թագաւորէ Ասորեստանի։ Ի հաստատութիւն պատմութեան Մար Իբասայ զՇամիրամայ՝ Խորենացին կը յիշէ Հայոց՝ հին առասպելները, յորս ասէ թէ կը պատմուէր Շամիրամայ հետի փախուստն և մահ ի Հայս։ Շամիրամ, ըստ առասպելին, ծարաւի, խնդրէ ջուր և ըմպէ. սուսերաւորք կու գան մօտ, և յուռութք (կախարդանք) Շամիրամայ կը նետուին ի ծովն, ուստի առակ էր, թէ Ուլունք Շամիրամայ ի ծով։ Ահա իմաստ առասպելին՝ Խորենացւոյն բառերով. «Եւ աշխարհիս մերոյ առասպելք զբազմահմուտ ասորին արդարացուցանեն՝ ասա ուրեմն զմահն ասել Շամիրամայ և զհետևակ փախուստն, և զպապաքումն և զխիղձս ջրոյն և զարբումն, այլ և ի մօտ հասանել սուսերաւորաց՝ և զյուռութսն ի ծով, և բան ի նմանէ. Ուլունք Շամիրամայ ի ծով»։ Թուի թէ Հայոց մէջ հին Քուշեան Անահտայ, կամ Ասորեստանեայց Աստղկան՝ Շամիրամայ վրայ կար գեղեցիկ վիպասանական երգ մը, զորոյ, բմբէ, իմաստը միայն կու տայ Խորենացին։ Թուի թէ Հայ առասպելը վերջապէս զՇամիրամ, զօրէն Նիոբեայ դստեր չարագործին Տանտաղոսի՝ կը պատմէր փոխեալ ի քար. ուստի կը յաւելու Խորենացին. «Այլ թէ ախորժիս առասպել՝ և Շամիրամ քար առաջին քան զՆիոբէ»։

**17.** Խորենացին ոչ ասէ յայտնապէս, սակայն թուի ակնարկել, թէ յետ Արայի Հայաստան եղաւ նահանգ կամ հարկատու իշխանութիւն Ասորեստանեայց, քանզի Ի. գլխոյն սկիզբը կ'սկսի յառաջ տանել զպատմութիւն իւր այսպէս. «Շամիրամ արդէն ի կենդանութեան իւրում՝ զորդին Արայի, որ ծնած էր ի սիրելի կնոջէ նորա Նուարդայ, և էր երկոտասանամեայ ի մահուան հօրն, առնէր Արայի կոչելով Արայ՝ կը դնէ վերակացու Հայոց, մտերմու-

թեամբ հաւատալով նմա զերկիրն։ Յետ այսօրիկ կը պատմէ, ասէ, (անտարակոյս Մար Իբաս) զայս օրինակ. Արալեան Արայ կը մեռնի Շամիրամայ (Զրադաշտի դէմ) պատերազմին մէջ, թողլով որդի ուժեղ և հանճարեղ, Անուշաւան անուն, որ Սօս կը կոչուէր, քանզի ըստ պաշտամանց (այսինքն ըստ յայնժամու կրօնից Հայոց) ձօնեալ էր Արմաւրի հայական սօսիներուն. որոց տերևներուն՝ օդէն հանդարտ կամ սաստիկ շարժման նայելով՝ սովոր էին առնել գուշակութիւնս Հայք, և այս երկար ժամանակ։ Այս Անուշաւան բաւական ժամանակ արհամարհութիւն կրելով ի Մինուասայ՝ մնաց արքունի դուռը, բայց բարեկամաց օգնութեամբ յաջողեցաւ իբրև հարկատու տիրել նախ մասին իրիք Հայաստանի, և ապա բոլորին»։

Այլ անդէն իսկ ի կենդանութեան իւրում Շամիրամ զծնեալն ի Նուարդայ սիրելւոյ կնոջէն Արայի, որ էր երկոտասան ամաց մնացեալ ի մահուանն Արայի, վասն առաջին իւրոց խանդաղատանացն որ առ Արայն գեղեցիկ՝ կոչէ զանուն նորա Արայ, և կարգէ զնա ի վերակացութիւն աշխարհիս, մտերմութեամբ հաւատացեալ ի նա . . . ։ Բայց յարէ (Մար Իբաս) զկարգ բանիցս զկնի այսօրիկ օրինակ զայս. Արայեանն Արայ մեռանի ընդ Շամիրամայ ի պատերազմի, թողլով արու զաւակ ամենահարուստ և չատահանճար յիր և ի բան զԱնուշաւանն, որ Սօս անուանիւր, քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց ի սօսիսն Արամանեկայ որ յԱրմաւիրն, զորոց սաղարթուցն սօսաւիւն ըստ հանդարտ և կամ սաստիկ շնչելոյ օդոյն ևեթ ուստ շարժումն՝ սովորեցան ի հմայս աշխարհիս Հայկազանց, և այս բազում ժամանակս։ Այս Անուշաւան բաւական ժամանակս արհամարհութիւն կրեալ ի Զամեասայ (Նինուասա), տուայտի ի դրան արքունի. իսկ օգնեալ ի բարեկամաց՝ չահի զմասըն ինչ աշխարհիս հարկահանութեամբ խնամել, զկնի ապա և զբոլորս։

18. Խորենացին ԺԹ. գլխոյն մէջ յետ Անուշաւանայ մինչև Ասորեստանի թագաւորութեան կործանումը կը դնէ քսան և վեց անձանց անունները, իբր վերակացուաց կամ հարկատու իշխանաց ընդ իշխանութեամբ Ասորեստանեայց։ Այս անուններն են.

| | | |
|---|---|---|
| Պարէտ | Առնակ | Զարմայր |
| Արբակ | Շաւարշ | Պերճ |
| Զաւան | Նորայր | Արբուն |
| Փառնաս | Վստասկար | Բազուկ |
| Սուր | Գոռակ | Հոյ |
| Հաւանակ | Հրանտ | Յուսակ |
| Վաշտակ | Ընձաք | Կայպակ |
| Հայկակ | Գղակ | Սկայորդի։ |
| Ամպակ | Հորոյ | |

**19.** Բայց յառաջ քան զայս Խորենացին մթին ոճով յառաջաբան մը կը դնէ իբրև ազգ՝ որոյ իմաստն այս է. «Կը դնեմ հոս մեր ազգին աւագագոյն մարդիկը և նախնիները և ինչ որ զմիոյ միոյ ի նոցանէ զրոյցք կամ գործք կը պատմուին, ոչ թէ ի մտաց ստեղծելով, այլ առնլով ի գրոց և ի բանից իմաստուն և այսոցիկ հմուտ մարդոց, յորոց ջանացի հաւաքել մեր հին պատմութիւնը։ Եւ ճշմարտութեամբ և ուղղամտութեամբ կը պատմեմ զայսոսիկ, բայց թէ են ճշմարտախօս նաև այնք յորոց հաւաքեցի՝ այն Աստուծոյ միայն է գիտելի, քանզի մեք օտար և հեռի եմք ի նոցանէ ժամանակաւ։ Բայց զիարդ և իցէ՝ հաւաստի կամ սակաւ ինչ թերի ի ճշմարտութենէ՝ պիտի պատմեմ, քանզի պատմութեանս կարգը կը պահանջէ յիշել զայսոսիկ»։

Յարմարեալ կարգեցից ի գիրս յայսոսիկ զա՛զգիս մերոյ զաւագագոյն զարս և զնախնիս, և որ ինչ վասն սոցա զրոյցք և իրականութիւնք, ոչ ինչ կամամտածական . . . , այլ որ ինչ ի գրոց . . . և որ ինչ ի բանից արանց իմաստնոց և յայսոսիկ քաջախոհակաց, յորոց մեք արդարապէս ջանացաք հաւաքել զհնագրութիւնս։ Եւ ասեմք լինել արդարաբան ի պատմութեանս յայսմիկ ըստ մերոյ յօժարութեան և ուղղամտութեան. իսկ ըստ որոց հաւաքումն՝ Աստուծոյ լինել յայտնիս, և մարդկան գովելիս կամ բասրելիս, և մեք այնոցիկ օտար և բացակացեալ։ . . . Այսոցիկ այսպէս կարգելոց, կամ հաւաստի կամ դոյզն ինչ կասեալ յարդարոյն՝ սկսայց քեզ և որ ինչ զկնի այսոցիկ ի հիւսման պատմութենէ պիտոյից։

Խորենացին, ինչպէս կը տեսնուի՝ կամի ասել, թէ Անուշաւանայ յաջորդաց անունները և գործերը, մինչև Պարոյր կամ մինչև ցանկումն Ասորեստանի տէրութեան՝ առած է ուրիշ աղբիւրէ կամ արժանահաւատ մարդոց վկայութենէ, և կը խոստանայ պատմել բազում ինչ զնոցանէ, բայց կը պատմէ ոչինչ. միայն զՀայկակայ ասէ, թէ էր առ Բեղոքոսիւ և սպանաւ ի պատճառս խռովութեան, զոր յարոյց յանխորհուրդս։ Եւ Զարմայրի համար, զոր կը դնէ առ Տրովական պատերազմաւ՝ ասէ, թէ Ասորեստանի Տևտամոս թագաւորէն եթովպացի զօրօք օգնական ղրկուելով Պրիամու՝ սպանաւ Հելլենացւոց քաջերէն, բայց կամի Աքիլլէսէն և ոչ յայլմէ քաջէ։

ԶՀայկակայ ասեն լինել առ Բելոքոսիւ, և ամբոխս իմն արարեալ անխորհուրդս, և մեռանել ի նմին (Խոր. Ա. ԺԹ.)։ Վասն Եղիականի պատերազմին պատմի առ Տևտամաւ Ասորեստանեայց, և մեր Զարմայր ի ծառայութեան Ասորեստանեայց՝ սակաւուք ընդ եթովպացի զօրուն օգնական Պռիամու, և անդ ի քաջացն Հելլենացւոց վիրաւորեալ մեռանի. այլ կամիմ յԱքիլլեայ, և մի՛ յայլ ումեքէ ի քաջացն (Խոր. Ա. ԼԲ.)։

**20**. Խորենացին կամ աղբիւր նորա Մար Իբաս վերոյիշեալ 29 անձանց (յԱրայէ մինչև ցՕկայորդին) իշխանութեան միջոցը, որ իբր 1000 տարի է,—քանզի կը համեմատէ զժամանակ նոցա ամաց 29 եբրայեցի նահապետաց, յԻսահակայ մինչև Յովրամ, 1896—880— այսպէս գրեթէ լռութեամբ կ'անցնի՝ ասելով. «Կ'երկարի յոյժ եթէ մանր յիշենք այս պատմութեան մէջ զբանս և զգործս նախակարգեալ մարդոց։ Ուստի թողլով զայնս որ չեն կարևոր՝ ասասցուք որ ինչ հարկաւոր է։ Յետ Շամիրամայ կամ Նինոսի, Ասորեստանեայց թագաւորութեան ժամանակ ապրող հայ իշխանաց վերջինն էր Պարոյր առ Սարդանապաղաւ»։ Յետոյ կ'սկսի պատմել, թէ ինչպէս «Վարբակէս մար, խորագէտ և քաջ պատերազմող, տեսնելով Ասորեստանեայց վերջին թագաւորին Սարդանապաղայ կնամարդի բարքը և հեշտասէր թուլութիւնը՝ առատաձեռնութեամբ յինքն յանկոյց ոչ սակաւ քաջ և պիտանի մարդիկ, որ զայնու ժամանակաւ նեցուկ և հաստատութիւն էին Ասորեստանի կառավարութեան։ Զքաջ նախարարն մեր զՊարոյր ևս յինքն յանկուցանէ, թագաւորութեան ձև և շուք խոստանալով նմա. և նիզակ և աղեղն և սուր գործածելու յաջողակ շատ մարդիկ ժողվելով կ'առնու զթագաւորութիւնն ի Սարդանապաղայ, և տիրելով Ասորեստանի և Նինուէի՝ վերակացուներ կը դնէ Ասորեստանի, իսկ աթոռը կը փոխէ ի Մարս։ Ուստի կու գամ ահա մեր թագաւորներուն որ տիրեցին Հայոց մինչև ի ժամանակս Պարթևաց»։

Կարի շատ լինի, թէ զամենայն որ ինչ արժան է՝ ասիցեմք ի ճառս զնախակարգելոց արանց զբանս և զգործս։ Թողլով զոչ կարևորագոյնսն ի բանից՝ ասասցուք որ ինչ հարկաւորն է։ Վերջին նոցա, որք առ Ասորեստանեայց թագաւորութեամբն, և որք ի Շամիրամայ կամ թէ ի Նինոսէ՝ զմերն ասեմ Պարոյր առ Սարդանապաղաւ։ Սա ոչ փոքր ինչ օգնականութիւն գտեալ ի Վարբակայ մարէ, բառնալով (որ եբարձ) զթագաւորութիւնն ի Սարդանապաղայ։ . . . Քանզի Վարբակէս, գաւառաւ մեդացի (մար), խորամանկագոյն ի կենցաղավարութեան և ի մարտս երևեալ, ծանուցեալ զանմարդի բարս և զհեշտասէր թուլամտութիւն յուլութեան Թուլոյն Կոնկոլերոյ (Սարդանապաղայ)՝ խաւացուցանէ բարուցն և ձեռացն առատութեամբ ի քաջացն և ի պիտանեաց արանց բարեկամս, որով և աշխարհակալութիւնն Ասորեստանի առ այնու ժամանակաւ վարէր յայտնապէս մեծաւ հաստատութեամբ։ Յինքն և զքաջն մեր նախարար յանկուցանէ զՊարոյր, թագաւորութեան ձև և շուք խոստանալով նմա, և բազմամբոխս յարի արանց, և որ ի տէգ նիզակի և յաղեղն և ի սուսեր աջողաձեռք։ Եւ այսպէս զթագաւորութիւնն ի Սարդանապաղայ յինքն առեալ՝ տիրէ Ասորեստանի և Նինուէի։ Բայց այլ վերակացուս կարգեալ Ասորեստանի՝ փոխէ զթագաւորութիւնն ի

Մաքա։ . . . Արդ այժմ անցից ի թիւ արանց, մանաւանդ թագաւորաց (Հայոց), մինչև ցտէրութիւնն Պարթևաց։

**21.** Հոս Խորենացին Պարոյրէն մինչև Տիգրան 9 թագաւոր գնելով, այսինքն

| | | |
|---|---|---|
| Պարոյր | Պաճոյճ | Միւս Հայկակ |
| Հրաչեայ | Կոռնակ | Երուանդ Սակաւակեաց |
| Փառնաւաս | Փաւոս | Տիգրան, |

առանց ամենևին յիշելու գործ ինչ ի սոցանէ՝ Հրաչէի համար միայն ասէ, թէ այսպէս կոչուեցաւ, վասն զի պայծառերես և բոցակնագոյն էր և թէ լինելով ժամանակակից Նաբուգոդոնոսորայ որ Հրեաները գերեց՝ խնդրեց և առաւ ի նմանէ Հրեայ գերիներէն երևելի օմն Շամբաթ անուն, յորմէ են, ասէ, ըստ Մար Իբասայ, Բագրատունիք։

Հրաչեայ սա կոչի վասն առանել պայծառերես և բոցակնագոյն իմն լինելոյ։ Առ սովաւ ասեն կեցեալ զՆաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց որ գերեաց զՀրեայս։ Եւ սորա (Հրաչէի) ասեն զմի ի գլխաւորաց Եբրայեցւոցն գերելոց խնդրեալ ի Նաբուգոդոնոսորայ, Շամբաթ անուն, ածեալ բնակեցոյց մեծաւ պատուով, և ի սմանէ ասէ պատմագիրն (Մար Իբաս) լինել զազգն Բագրատունի։

Ի թագաւորաց ասոր ինունց զՀրաչէէ միայն համառօտիւ այսչափ խօսելով Խորենացին կու գայ առ Տիգրան, զորմէ փառաւոր գովեստ մը կը յօրինէ, և ապա Աժդահակայ դէմ պատերազմը երկայն և մանր պատմելով կը վերջացնէ իւր Հայկազանց պատմութիւնը։ Ահա Տիգրանայ վրայ գրուածը, զոր ի Մար Իբասայ առած է.

**22.** Գանք, ասէ, այսուհետև Տիգրանայ և գործոց նորա։ Տիգրան մեր բոլոր թագաւորաց հզօրագոյնը և իմաստնագոյնն է, և քաջ քան զամենեսին։ Կիւրոսի աջակցելով եբարձ Մարաց իշխանութիւնը, նաև Յոյները նուաճելով հնազանդեցուց ոչ սակաւ ժամանակ։ Մեր երկիրն ընդարձակելով հասոյց ի նախկին սահման իւր։ Եղաւ նախանձելի իւրոց ժամանակակցաց, և յետնոց ևս ըղձալի, ինքն և ժամանակ իւր։ Քանզի ո՞ր ողջամիտ և քաջութիւն և իմաստութիւն սիրող մարդ ոչ զուարճասցի յիշատակաւ սորա և ոչ յորդորիցի նմին նման լինել։ Քաջերու գլուխ անցնելով արութիւններ գործեց և զազգ մեր բարձրացոյց։ Զմեզ որ ընդ լծով էաք՝ արար լծադիր և հարկապահանջ բազմաց։ Բազմացոյց ոսկւոյ և արծաթոյ գանձեր, պատուական քարեր, արանց և կանանց համար պէսպէս գունովք և անկուածովք զգեստներ, որովք տգեղքն ե-

րև զգեղեցիկս սքանչելի կ՚երևէին, իսկ գեղեցիկքն՝ դիւցազունք ժամանակին։ Զօրքը որոց զէնք էին առաջ պարսատիկ և շերտ, և հետոյ կ՚երթային գրեթէ մերկ՝ առ հասարակ վառեցան աղեղամբք, սուսերօք և նիզակօք, և պատեալ զրահիւք և. վահանօք՝ ձիով կ՚երթային, այնպէս որ երբ ի մի վայր կու գային՝ տեսիլ նոցա և շողիւն պահպանակաց նոցա և զինուց բաւական էր ահիւ հալածել զթշնամին։ Միով բանիւ Տիգրանայ ժամանակ խաղաղութիւն և շինութիւն էր, և ամենայն ոք սնանէր իւղով և մեղու։

Զայսոսիկ և զայլ բազում ինչ սոցին նման արար երկրի մերում այս Տիգրան Երուանդեան, խարտեաշն և գանգրահեր, երեսօք գունեան և մեղուակն, անձնեայ և թիկնաւէտ, առոյգաբարձ և գեղեցկոտն, պարկեշտ ի կերակուրս և յըմպելիս, և ի զուարճութիւնս օրինաւոր։ Ցերգս վիպասանաց, զորս նախնիք մեր կ՚երգէին՝ առ ի զմանէ, թէ և ի հեշտութիւնս մարմնոյ էր չափաւոր, նաև մեծիմաստ, պերճաբան և յամենայնի պիտանի մարդկութեան։ Զինչ կայ ինձ աւելի սիրելի ի մատենիս յայսմիկ՝ քան թէ երկարել զգովեստ և զպատմութիւն սորա։ Իբրև թագաւոր զամենայն ինչ արդարութեամբ դատէր, իբր թէ իւրոց մտաց լծակաւ կը կշռէր իւրաքանչիւր մարդոյ վարքը։ Ոչ մեծերուն կը նախանձէր, և ոչ ստորինները կ՚արհամարհէր, այլ իւր խնամոց վերարկուն ի վերայ ամենեցուն հաւասար կը տարածէր»։

Բայց անցցուք այսուհետև և որ ինչ յաղագս Տիգրանայ և որ ի նմանէ գործք։ Քանզի սա ամենեցունց թագաւորացն մերոց հզօրագոյն և խոհեմագոյն, և արանցն այնոցիկ և ամենեցուն քաջ։ Որ և Կիւրոսի աջակցեալ, զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւնն, և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր։ Եւ զսահման մերոյ բնակութեանս ընդարձակեալ՝ ի հինսն մեր հասուցանէ յեզերս ծայրից բնակութեանց, և ամենեցուն որ առ իւրովքն էին ժամանակօք՝ նախանձելի, և յետնոցս բղձալի ինքն և ժամանակ իւր։

Զի ո՞ ոք ի ճշմարիտ արանց, և որոց ի բարս արութեան և խոհականութեան սիրելութիւն կայցէ, սորա յիշատակօքն ոչ զուարճասցի և յորդորիցի այսպիսի այր լինել։ Արանց կայեալ գլուխ, և արութիւն ցուցեալ՝ զազգս մեր բարձրացոյց, և զընդ լծով կայեալսն՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և այլս այլս գունոց և անկուածոց՝ արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց, որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առ հասարակ դիւցազանցեալք։ Հետևակամարտքն ի վերայ ուսոյ ձիոց բերեալք, և պարսաւորքն առհասարակ դիպաղեղունք, և չերտաւորքն ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք, մերկքն վահանօք և զգեստիւք երկաթոյ պարածածկեալք։ Որոց ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն, և որ ի նոցայցն պահպանակաց և զինուց փայլ-

մունք և չողիւնք՝ զթշնամիսն արտահալածել։ Խաղաղութեան և շինութեան բերող, իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ։

Զայս և որ այլ այսպիսիք բազումք՝ երեր մերոյ աշխարհիս խարտեաշս այս և ալեբեկ ծայրիւ հերաց Երուանդեանս Տիգրան, երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն ի կերակուրս և յըմպելիս, և ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին ի հինան մեր, որք բամբռամբն երգէին՝ լինել սմա և ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր, մեծիմաստ և պերճաբան, և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի։ Եւ զինչ ինձ ի գիրս յայս առդեօք իցէ բան սիրելի, քան թէ որ յաղագս սորա էին գովեստք և պատմութիւնք յերկարել։ Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի՝ զամենայն ուրուք կենցաղ մտացն լծակաւ կշռէր։ Ոչ ընդ լաւագոյնսն խանդայր, և ոչ զնուաստսն արհամարհէր, այլ ամենեցուն հասարակաց հնարէր զխնամոցն իւրոց ի վերայ տարածել զգեստս։

**23.** Յետ յօրինելոյ զայս գովեստ զՏիգրանայ՝ Խորենացին ի Մար Իբասայ առնլով կ'սկսի պատմել Աժդահակայ կասկածը Տիգրանայ Կիւրոսի հետ մտերմութենէն, երազը, նենգաւոր խնամութիւնը Տիգրանայ հետ, պատերազմը, յաղթուիլն ի Տիգրանայ և Մարաց գերութիւնը։

«Յաւուրսն յայնոսիկ, ասէ (Մար Իբաս), ոչ սակաւ վտանգ կար Մարաց թագաւորին Աժդահակայ ի միաբանութենէն Կիւրոսի և Տիգրանայ, և այս պատճառաւ սաստիկ ծփանաց մէջ էր Աժդահակ։ Գիշեր մը այսպիսի ալէկոծեալ խորհուրդներով անկողին մըտնելով, այն ինչ ի քուն եղև՝ երազին մէջ տեսաւ ինչ որ յարթնութեան իւրում ո՛չ տեսած էր և ոչ ականջով երբէք լսած. ուստի ընդոստ ելլելով քունէն՝ չսպասեց ըստ սովորութեան խորհրդականաց ժողովին գումարման, այլ գիշերայն կանչեց աւագանին, և տխրութեամբ գետին նայելով կը հառաչէր ի խորոց սրտէ, և երբ խորհրդականք հարցուցին այս հառաչման պատճառը՝ ուր ուրեմն հեծութեամբ սկսաւ յայտնել զիւրոյ սրտին խորհուրդ և զկասկած, միանգամայն երազոյն ահագին տեսիլն այսպէս.

Երազիս մէջ կը թուէր ինձ, սիրելիք, անծանօթ երկիր մը գտնուիլ երկրէս վեր շատ բարձր լեռան մը մօտ, որոյ գագաթն սառնամանեօք պատեալ կ'երևէր, և ասէին թէ Հայաստան էր այն երկիրը։ Մինչ ես ապշեալ կը նայէի լեռն ի վեր՝ կին ոմն ծիրանազգեստ, երկնագոյն քօղով, նստած երևեցաւ այն բարձր լերան ծայրը, աչեղ, բարձրահասակ, կարմրայտ, և որդեծնութեան ցաւով բռնուած։ Երկար գիտելով այս հիանալի տեսիլը՝ տեսայ որ կինը յանկարծ երեք գիւցազունք ծնաւ, հասակաւ և բնութեամբ կատարեալ։ Առաջինը հեծնելով առիւծու վրայ՝ սլացաւ դէպ արևմուտք, երկրորդը նստաւ ընձու վրայ և ի հիւսիս արշաւեց, իսկ

երրորդն անարի վիշապ մը սանձելով կը յարձակէր մեր երկրին վըրայ։ Այսպիսի խառն երազոց մէջ, կը թուէր ինձ կալ արքունեաց տանեաց վրայ, և յարկին վերին երեսը կը տեսնէի գեղեցիկ շուորըուանօք զարդարեալ, և զմեզ պսակող դիք էին անդ հրաշալի տեսլեամբ, իսկ ես և դուք զոհիւք և խնկովք կը պատուէինք զնոսա։ Այս միջոցին յանկարծ վեր նայելով տեսայ, որ վիշապին վրայ հեծնողն իբրև զարծուի սլացեալ թևօք կու գար մեր վրայ, որ և մօտ հասնելով կամէր կործանել զդիս։ Բայց ես, Աժդահակ, խարոց կենալով ի միջի՝ իմ վրաս կրեցի այն յարձակումը, քաջաբար կռուելով ընդ դիւցազնոյն։ Նախ նիզակներով յօշոտեցինք իրարու մարմին, այնպէս որ արեան վտակներ հոսելով՝ մեր արեգակնատես ապարանից երեսը ներկեցին կարմրագոյն։ Բայց ի՞նչ երկարեմ. կռուոյն վախճանն էր իմ կործանումս. ուստի և ի սաստիկ քրտան և ի տագնապի ընդոստ յարեայ ի քնոյ, և գրեթէ անկենդան եմ. քանզի ուրիշ ի՞նչ կը նշանակէ այս տեսիլը՝ եթէ ոչ ի Հայկազնոյն Տիգրանայ մեր վրայ գալու բուռն յարձակումը։ Եւ ո՜վ արդեօք, յետ աստուածոց, կրնայ օգտակար խրատ տալ ինձ. անշուշտ թագաւորակից առնեմ ինձ զայնպիսին։

Աժդահակ շատ իմաստուն խորհուրդներ լսելով խորհրդակիցներէն՝ շնորհակալութեամբ ետ նոցա պատասխանի օրինակ զայս.

Ձեր իմաստուն խորհուրդները լսելով, սիրելիք, ասացից զոր ինչ ես կը խորհիմ օգտակար յետ աստուածոցն օգնականութեան։ Թշնամեաց խորհուրդներն ի դերև հանելու աւելի օգտակար միջոց չկայ, քան դաւել զնոսա սիրոյ պատրուակաւ։ Եւ այս ոչ կաշառով հնար է և ոչ պատիր բանիւք, այլ սա կերպով, զոր ես յարմարագոյն կը տեսնեմ։ ԶՏիգրան դաւաճանելու շատ յարմար միջոց է վասն մեր օրիորդն Հայոց Տիգրանուհի։ Խնամութիւնն ապաքէն կը գիւրացնէ երթևեկութիւնը, և այսու առթիւ կրնանք ինչս կամ պատիւ խոստանալով մտերմաց Տիգրանայ՝ տալ խողխողել զնա սրով, և կամ դեղոց հնարիւք սպանանել, և կամ զարս հաւատարիմս և զկուսակալս նորա հեռացուցանելով ի նմանէ՝ իբրև անզօր առաջ ձգել զնա ընդ մերով ազդեցութեամբ։

Խորհրդականք Աժդահակայ հաճեցան ընդ այս խորհուրդ, և իսկոյն առաջարկութիւնն սկսաւ ի գործ դրուիլ։ Մարաց աւագանիներէն մին ղրկուեցաւ առ Տիգրան մեծամեծ գանձիւք և նամակաւ մը, որոյ պատճէնն այս էր.

'Սիրելի եղբայրութիւնդ գիտէ, թէ չիք ինչ օգտակարագոյն յաշխարհի յաստուածոց պարգևեալ մեզ քան բազմութիւն սիրելեաց, մանաւանդ իմաստնոց և հզօրագունից։ Քանզի այսպէս

մեր վրայ արտաքուստ խռովութիւններ չեն գար, և եթէ գան՝ շուտով կը հերքուին. իսկ ներքուստ ամենևին չեն կրնար ծագել։ Արդ իմ տեսեալ բարեկամութեան այս մեծ օգուտը՝ խորհեցայ ի մէջ ձեր և իմ հաստատուն և խորագոյն սէր հաստատել, որպէս զի երկոքինս ամէն կողմանէ ամրացեալ՝ ողջ և անշարժ պահենք զսէրութիւն մեր։ Այս սէրը լիովին պիտի կատարուի կարծեմ, եթէ Հայոց Մեծաց օրիորդն, զՏիգրանուհի քոյր ձեր, հաճիք տալ ինձ կնութեան։ Կարծեմ թէ լաւ համարելոց ես, զի Տիգրանուհի լիցի տիկնաց տիկին Մարաց։ Ողջ լեր, թագակից մեր և սիրելի եղբայր,։

Զերկարեմ խօսքս, ասէ Մար Իբաս. պատգամաւորը կու գայ և կը կատարէ գործը. քանզի Տիգրան չգիտելով դաւաճանութիւնը՝ կը հաճի տալ Աժդահակայ կնութեան զքոյր իւր Տիգրանուհի, զոր և շուտով կը յուղարկէ ինչպէս օրէն է թագաւորաց, և Աժդահակ մեծ պատուով ընդունելով զՏիգրանուհի՝ առնէ զնա իւր կանանց առաջինը, ոչ միայն առ նենգութեան սրտին, այլ և վասն գեղեցկութեան օրիորդին։

Աժդահակ, կ'ըսէ (Մար Իբաս), յետ հաստատելոյ զՏիգրանուհի ի տիկնութեան՝ չառնէր ինչ առանց կամաց նորա բոլոր թագաւորութեան մէջ, այլ անոր խօսքովը կը գործէր, և ամենուն պատուիրած էր հրամանի նորա հնազանդել։ Յետ առնելոյ զայս այսպէս՝ սկսաւ մեղմով յայտնել դաւաճանութեան խորհուրդը։ Ձեզ գիտեմ, ըսաւ, եղբայրդ Տիգրան իր կնոջը Զարուհւոյ թելադրութեամբ սկսաւ նախանձել տիկնութիւնդ Արեաց վրայ։ Հիմա ուրիշ բան չուզեր՝ եթէ ոչ զիս սպաննել տալ, որպէս զի Զարուհի լիցի տիկին բոլոր Արեաց, և իբրև աստուածուհի պաշտուիլ։ Հիմա մնայ քեզ ընտրել զմի յերկուց աստի, կամ եղբայրասէր լինել և ամօթալի կործանում յանձն առնուլ Արեաց առջև, և կամ անձիդ օգուտը խորհելով՝ այս չարեաց առաջն առնուլ։

Բայց խորամանկ խրատուն հետ կար ի ծածուկ նաև Տիգրանուհւոյ մահը՝ եթէ ըստ խրատու Աժդահակայ չվարուէր։ Բայց խորագէտն Տիգրանուհի իմանալով դաւը՝ քաղցրութեամբ պատասխանեց, և դաւաճանութեան խորհուրդը գաղտ իմացուց Տիգրանայ։

Աժդահակ չգիտնալով զայս՝ պատգամաւորաց ձեռօք հրաւիրեց զՏիգրան երկու թագաւորութեանց սահմանին մօտ տեղ մը իրարու հետ տեսնուիլ, որպէս թէ կարևոր ինչ ունէր հաղորդել նմա, և թէ գրով կամ պատգամաւորի բերնով չկրնալով՝ պարտ էր բերան ի բերան խօսել։ Բայց Տիգրան որ գիտէր Աժդահակայ

խորամանկութիւնը՝ գրով յայտնեց Աժդահակայ թէ գիտակ էր ծածուկ նենգութեան նորա։ Այսպէս չարութիւնը յայտնուեցաւ, այնպէս որ չէր կրնար այնուհետեւ խորամանկութեամբ ծածկուիլ, ուստի և յայտնի գրգռեցաւ պատերազմը։

Ապա թագաւորն Հայոց՝ Կապադովկիոյ, Վրաց և Աղուանից երկիրներէն, ի Մեծ և ի Փոքր Հայոց ընտիր մարդիկ ժողվելով խաղաց Մարաց վրայ, և Աժդահակ ստիպուեցաւ պատահել պատերազմաւ հայկազին ոչ սակաւ ամբոխիւ։ Բայց կռիւը երկարեցաւ մինչև հինգ ամիս. քանզի կը վարանէր Տիգրան, երբ կը խորհէր իւր սիրելի քոյրը, և կը ջանար ամէն կերպով հնար գտնել զՏիգրանուհի ազատելու։ Վերջապէս հարկ եղաւ ճակատ տալ։

Բայց կը զովեմ, ասէ Խորենացին, զՏիգրան, քաջահաստկն, ամենևին բոլոր անդամօք համեմատ, առոյգ, և որ ուժով չունէր զօք ինքեան հաւասար։ Եւ ինչ երկարեմ խօսքս. երբ կռիւը սկսաւ՝ նիզակաւ իբր ջուր ճեղքելով երկաթի զրահը՝ կը շամփրէ զԱժդահակ ի տէգ նիզակի իւրոյ, և երբ յետ կը քաշէ ձեռքը՝ թոքին մէկ մասը նիզակին հետ դուրս կը բերէ։ Սակայն կռիւն օքանչելի էր. քանզի քաջք քաջաց պատահելով դիւրաւ չէին տար տեղի, ուստի և կռիւը երկարեցաւ ժամերով, և Աժդահակայ մահը միայն վախճան տուաւ գործին։ Այսպէս աճեցաւ և բազմացաւ Տիգրանայ փառքը։

Սա ևս կը պատմուի թէ, ասէ Խորենացին, յետ կատարելոյ զայս ամենայն՝ Տիգրան կը յուղարկէ դքոյր իւր Տիգրանուհի մեծ ամբոխիւ թագաւորապէս Հայաստան, այն աւանը զոր շինեց յիւր անուն կոչելով Տիգրանակերտ, և շրջակայ գաւառները սեպհականեց նմա։ Այն կողմանց ոստան կոչուած ազատ մարդոց համար ևս ասէ (Մար Իբաս), թէ Տիգրանուհւոյ զարմէն են։

Իսկ Աժդահակայ առաջին կինը զԱնոյշ և թագաւորական տունէն աղջկունս և պատանիս բազումս և ուրիշ գերիներ իբր տասն հազար, բնակեցոյց մեծ լերան (Մասեաց) արևելեան կողմը, տալով նոցա սահման մինչև Գողթան, զՏամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնս և ուրիշ դաստակերտս գետին եզերքը, յորոց մին Վրանջունիք, մինչև Նախճաւանու ամրոցին դիմացը, ինչպէս նաև սա երեք աւանները— Խրամ, Ջուղա և Խոշակունիս. իսկ գետոյն միւս կողմէն՝ բոլոր դաշտը, որոյ ծայրն է Աժդանական, դարձեալ մինչև նոյն Նախճաւանոյ ամրոցը։ Իսկ Աժդահակայ կինը զԱնոյշ իւր որդւովք բնակեցոյց մեծ լերան ընդարձակ փլածին ծայրը, զորմէ ասի թէ ահագին շարժէ մը եղած է։ Անուշայ տուաւ Մարաց ազգէն պաշտօնեաներ ևս, որ լերան ստորոտը բնակեցան։

Էր, ասէ (Մար Իբաս), յաւուրսն յայնս ոչ սակաւ ինչ վտանգ որ ի Մարացն Աժդահակայ, ի միաբանութենէ Կիւրոսի և Տիգրանայ։ Վասն որոյ և ի սաստկութենէ ծփանաց խորհրդոյն լինել նմա ի տեսլենէ երազոյն երեւութանալ ի քուն գիշերոյ՝ զոր ոչ երբէք յարթնութեան ետես աչօք և ոչ ի լուր ականջաց լուաւ։ Ուստի և ընդոստ ի քնոյն լինելով ոչ յամէ ըստ սովորութեան կարգին ի ժամ խորհրդականութեանն, այլ այն ինչ գիշերոյն ժամս ունելով ոչ սակաւս՝ ձայնէ զխորհրդակիցսն, և տրտում երեսօք յերկիր հայելով ի խորոց սրտին մռնչէ յոգոյհանութեամբ։ Եւ ի զվասնէրն ի խորհրդակցացն հարցանել՝ յերկարէ ժամս ինչ զպատասխանիսն, և ուր ուրեմն հեծութեամբ սկիզբն արարեալ յայտնէ զամենայն որ ի ծածուկ սրտին խորհուրդ և կասկած, ընդ նմին և զիրս ահագին տեսլեանն.

Էր ինձ, ասէ, ով սիրելիք, լինել այսօր յերկրի անծանօթում, մերձ ի լեառն մի երկար յերկրէ բարձրութեամբ, որոյ գագաթն սաստկութեամբ սառնամանեաց թուէր պատեալ, և ասէին գողցես յերկրին Հայկազանց զայս լինել։ Եւ ի նայել ինձ յերկարագոյն ի լեառնն՝ կին ոմն ծիրանազգեստ, երկնագոյն ունելով զիւրեաւ տեռ, նստեալ երևեցաւ ի ծայրի այսպիսւոյ բարձրութեան, աչեղ, բարձրահասակ և կարմրայտ, երկանց ըմբռնեալ ցաւով։ Եւ յերկարագոյն նայելն իմ յայսպիսի երևումն և ի հիացման լինել՝ ծնաւ կինն յանկարծ երիս կատարեալս ի դիւցազանց հասակաւ և բնութեամբ։ Առաջինն զերանսն ածեալ ի վերայ առիւծու՝ սլանայր յարևմուտս, և երկրորդն ի վերայ ընձու՝ ի հիւսիսի հայելով, իսկ երրորդն զվիշապն անարի սանձեալ՝ ի մերոյս վերայ չահատակեալ յարձակէր տէրութեանս։

Եւ ի մէջ այսպիսեաց խառն երազոց թուէր ինձ կալ ի վերայ տանեաց իմոց արքունեացս, և զնոյն ինքն վերին երեսս յարկացս տեսանել գեղեցիկ և բազմագոյն չատրուանօք զարդարեալ, և զպաշտողսն զմեզ զդիսն մեր հրաշատեսիկ տեսլեամբ ի վերայ կացեալ, և զիս ձեւք հանդերձ զսոսա պատուեալ զոհիւք և խնկովք։ Եւ յանկարծ ի վեր հայեցեալ, զայն որ ի վերայ վիշապին հեծեալ կայր՝ արծուանման սլացեալ թևօք տեսի յարձակեալ, որ մօտ հասեալ խորհէր կործանել զդիսն։ Իսկ ես Աժդահակ խտրոյ ընդ մէջ անկեալ և յիս զայնպիսի եղեալ յարձակումն ընկալայ, մարտ ընդ սքանչելւոյն առնելով դիւցազանն։ Եւ նախ ի տէգ նիզակաց զմարմինս երկաքանչիւրոցս յօշելով վտակս արեան ի վայր հոսեցուցաք, զարեգակնատես երեսս ապարանիցս արեան հոսեալ ցուցաք ծով։ Այսպէս և զկնի այլովք զինուք ժամս ոչ սակաւս։

Բայց զինչ օգուտ ինձ և խօսից երկարութիւն, զի վախճան գործոյն իմն էր կործանումն. ուստի և ի քրտան սաստիկ վտանգի եղեալ՝ փախեաւ յինէն քունն, և այսուհետև ոչ թուիմ կենդանի։ Զի ոչ այլ ինչ նշանակէ երեւութիցս չարժումն՝ եթէ ոչ որ ի Հայկազեանն Տիգրանայ հասանելոց է մեզ բռնութեան յարձակումն։ Բայց ով արդեօք, յետ աստուածոյն օգնականութեան, բանիւ և գործով մեզ յօգուտ խորհելով ոչ զինքն կարծիցէ թագաւորակից մեր լինել։ Եւ բազում ինչ ի խորհրդակցացն լուեալ օգտութեան մտածութիւն՝ շնորհակալութեամբ պատուէ զնոսա։

Բազում ինչ հանճարով և իմաստութեամբ ի ձէնջ լուեալ, ով սիրելիք, ասացից և որ ինչ իմ յետ աստուածոցն օգնականութեան յայտսնիկ օգտակար բան և մտածութիւն։ Քանզի ոչ ինչ առ թշնամեացն զգուշութիւն վեհագոյն

բերէ օգնականութիւն և ծանօթութիւն նոցայցն առաջի արկելոցն գործոց՝ քան թէ որ ի ձեռն սիրոյն զգուշելն ոք խորհիցի։ Եւ զայս դարձեալ ոչ ի ձեռն բանից պատրողաց այժմ առ մեզ հնարաւորութիւն է կատարել՝ եթէ ոչ որպէս կամք են ինձ այժմ գործել։ Եւ այն է նիւթ կատարման խորհրդոյս և հնարք որոգայթից—գեղեցիկն ի կանայս և խոհեմ, քոյր նորա Տիգրանուհի։ Զի այսպիսի իսկ արտաքուստ և ներքուստ հարազատութիւնք համարձակ զգուշելն ի ձեռն երթևեկութեան անյայտաբար ընդ արձակ մարթացուցանեն վարժել, կամ յանկարծօրէն իւրոց մտերմաց, ընչիւք և խոստմամբ պատուոց՝ տալ հրաման սրով խողխողել և կամ դեղոց հնարիւք, և կամ ըզմտերիմս նորա և զկուսակալս գանձիւք ի նմանէ ի բաց մերկանալ, և այսպէս իբրև զանզօր տղայ ի բուռն առցուք։

Եւ ազդող համարեալ բարեկամացն զայսպիսի խորհուրդ՝ նիւթեն և զգործն, ի ձեռն միոյ ուրեմն ի խորհրդակցացն տուեալ բազմութիւն գանձուց, և ի ձեռն թղթոյ օրինակաւս այսուիկ յուղարկէ.

Գիտէ սիրելի եղբայրութիւնդ՛ քո, ոչ ինչ օգտակարագոյն ի կեանս աշխարհիս ի դիցն մեզ պարգևեալ՝ քան զսիրելեաց բազմութիւն, և այս՝ իմաստնոց արդեւք և հզօրագունից. զի այսպէս և արտաքուստ ոչ ի վերայ համարձակին խռովութիւնք, և եկեալքն վաղվաղակի հերքին, իսկ ի ներքս ոչ զմուտն յումեքէ գտեալ այսպիսւոյ չարութեան՝ հալածեալ լինին։ Արդ զայսպիսի շահ օգտութեան որ ի բարեկամութենէ լինի, տեսանելով խորհեցայ ես հաստատուն և խորագոյն զսէրն որ է ի մէջ մեր՝ հաստատել. զի երկոքեանս յամենայն կողմանց ամրացեալք՝ ողջ և անշարժ զտէրութիւն մեր կալցուք։ Եւ այս լինի ի տալն քում զօրիորդն Հայոց Մեծաց զքոյր քո Տիգրանուհի ինձ կնութեան. թէ արդեօք և բարի համարեսցիս դմա, զի թագուհեաց թագուհի լիցի։ Ողջ լեր, թագակից մեր և սիրելի եղբայր։

Եւ առանց յերկարելոյ զբանս ասացից։ Գայ առաքեալն և կատարէ յաղագս օրիորդին գեղեցկի. զի յանձն առեալ Տիգրանայ՝ տայ զքոյր իւր Տիգրանուհի Աժդահակայ կնութեան։ Ոչ ես գիտելով զառ ի նմանէ դաւաճանութիւն՝ յուղարկէ զքոյր իւր որպէս օրէն է թագաւորաց։ Զոր առեալ Աժդահակայ, ոչ միայն վասն նենգին որ ի սրտին իւրում, այլ վասն գեղեցկութեանն՝ առաջին կարգէ կանանց իւրոց, և զչարութիւնն ի ներքոյ ոստայն հինու։

Զկնի այսորիկ ասէ (Մար Իբաս), թէ ի հաստատել Աժդահակայ զՏիգրանուհի ի տիկնութիւն՝ ոչ ինչ առանց կամաց նորա ի թագաւորութեանն իւրում գործէր, այլ բերանով նորա կարգէր զամենայն, և հրամանի նորա ամենեցուն հնազանդ լինել հրամայէր։ Եւ յօրինեալ զայս այսպէս՝ սկսանի մեղմով մատուցանել նմա պատրանս. Ո՞չ գիտես, ասէ, եթէ եղբայր քո Տիգրան խանդացաւ զտիկնութիւնդ քո ի վերայ Արեաց, ի կնոջէ իւրմէ ի Զարուհեայ գրգռեալ։ Եւ զինչ լինիցի այն՝ եթէ ոչ նախ ինձ մեռանել, և ապա լինել զԶարուհի ի վերայ Արեաց՝ և զաստուածուհեաց ունել զտեղի։ Բայց արդ ընտրելի է քեզ այժմ զմի յայսցանէ, կամ լինել եղբայրասէր, և կործանումն խայտառակելի յանդիման Արեաց յանձն առնուլ, և կամ զանձին իմանալով զբարի՝ խորհուրդ օգտակար ի մէջ բերել և յաղագս առաջակայիցն հոգալ։

Բայց էր ի մէջ այսպիսւոյ խորամանկութեան թագուցեալ և զմեռա-

նեյն Տիգրանուհեաց, եթէ ոչ ինչ ըստ կամաց խորհեսցի մարապարսացւոյն։ Այլ իմացեալ խորագիտոյ գեղեցկին զայսպիսի դաւաճանութիւն՝ պատասխանի տանէ սիրոյ բանս Աժդահակայ, և արագագոյն ի ձեռն մտերմաց պատմէ եղբօրն զնենգութիւնն։ Եւ (Աժդահակ) ձեռնարկէ այնուհետև ի գործն ի ձեռն պատգամաւորութեան—գալ նոցա ի միաբանութիւն տեսութեան ի տեղի միջոց սահմանաց երկոցունց թագաւորութեանց, իբր բան ինչ և գործ հարկաւոր համարել, որ ի ձեռն գրոյ և հրեշտակութեան կատարել ոչ է կարողութիւն, եթէ ոչ և դէմք երկոցունցն հանդէպ լինիցին։ Այլ գիտելով Տիգրանայ զառաքելոյ իւրին կատարումն՝ ոչինչ յորոց խորհէրն Աժդահակ՝ ծածկէր, այլ ի ձեռն գրոյ յայտնէ որ ինչ ի նորայն խորութեան սրտին։ Եւ ի յայտնել այսպիսւոյ չարութեանն՝ ոչ ինչ այնուհետև էր բան և խորամանկութիւն, որ զայսպիսիս առագաստէր զչարութիւն, այլ յայտնի այնուհետև զրգռէր խազմն։

Եւ ժողովէ ազգայն Հայոց ի սահմանացն Կապադովկացւոց, և որչափ ընտիրք Վրաց և Աղուանից աշխարհին, և զամենայն ընտիրս Հայոց Մեծաց և Փոքունց։ Եւ խաղայ ամենայն զօրութեամբ իւրով զկողմամբք Մեդացւոց։ Վտանգ հասանէ այնուհետև Աժդահակայ պատահել պատերազմաւ Հայկազինն՝ ոչ փոքր ինչ ամբոխիւ։ Եւ երկայնէր հակառակութիւնն մինչև ցամիսս հինգ. քանզի հիւանդանայր գործն արագ և առողջ, յորժամ զմտաւ ածէր Տիգրան յաղագս քեռն իւրոյ սիրելւոյ։ Եւ այսպէս զելս իրացն հնարէր յարդարել, զի ապրելոյ ճար լիցի Տիգրանուհեայ։ Ի պատահման այսորիկ և ժամ մարտին մերձենայ։

Բայց զովեմ զքաջահասակն զիմ և զնիզակաւորն և զամենևին բոլոր անդամովք համեմատն և ի գեղեցկութիւն տարատեալ հասակի. քանզի աւագ, ամենայնիւ ըստ իրեաւս պատշաճեալ, և ուժով ոչ զոք իւր ունելով զոյգ։ Եւ զի՞ երկայնեմ զբանս. քանզի ի լինել պատերազմին, նիզակաւ որպէս զջուր հերձեալ զերկաթի ամուր հանդերձն՝ շամփրէ զԱժդահակ յընդարձակ տէգ նիզակին, և յամփոփել միւսանգամ զձեռն՝ արտաքս զկէս մասն թոքիցն հանդերձ զինուն ի դուրս բերէ։ Բայց մարտն էր աքանչելի, զի քաջք դիպեալ քաջաց՝ ոչ վաղվաղակի թիկունս ի միմեանց դարձուցանէին. վասն որոյ յերկարեալ քարշէր գործ պատերազմին ժամս ձիգս։ Իսկ վախճան գործոյն առնէր մահն Աժդահակայ, և այսպիսի դիպուածս ի բարեբախտութիւն յաւելեալ յանախէր փառս Տիգրանայ։

Գտանի և այս, թէ զկնի այսպիսի իրաց կատարման՝ (Տիգրան) յուղարկէ թագաւորապէս զքոյր իւր Տիգրանուհի մեծ ամբոխիւ ի Հայս, յաւանն զոր շինեաց իւրով անուամբ Տիգրան, որ է Տիգրանակերտ, և զգաւառն զայնոսիկ ի ծառայութիւն նմա հրամայէ։ Եւ զոստանն անուանեալ կողմանցն այնոցիկ ազատութիւն ի զարմից սորա տայ լեալս իբր թագաւորական զարմ։

Իսկ զԱնոյշ զառաջին կինն Աժդահակայ և զբազումս ի սերմանէ Աժդահակայ աղջկունս հանդերձ պատանեկօք և այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի՝ բնակեցուցանէ յարեւելեայ ուսոյց մեծի լերինն մինչև ի սահմանս Գողթանն, որ են Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք և այլք առ եզերբ գետոյն դաստակերտք, յորոց մին է Վրանջունիք, մինչև հանդէպ ամրոցին Նախջաւանու. և զերիս աւանսն, զԽրամ, զՋուղայ և զԽօշակունիս։ Իսկ ի միւս կողմանէ գետոյն զբոլոր դաշտն, որոյ գլուխն Աժ-

դանակաւն, մինչև ցնոյն ինքն ամուրն Նախճաւանայ։ Բայց զնախասացեալ Անոյշ բնակեցուցանէ որդւովքն իւրովք յանդորրութեան ապառաժի փլածի մեծի լերինն, զորմէ լեալ ասեն յահագին իմն շարժմանէ . . . Իսկ պաշտօնեայս տայ Անուշայ ի նոյն Մարաց, որ առ ստամբ լերինն բնակեցան։

**24**. Ըստ Խորենացւոյն Տիգրանայ որդիքն էին Բաբ, Տիրան և Վահագն։ Վահագնի վրայ Խորենացին կը յիշէ հին անուանի առասպելն «Երկնէր երկին», զոր բամբռնահարք (տեսակ մը երգիչներ Հայոց մէջ) կ'երգէին մինչև Խորենացւոյն ժամանակ։

«Ոմանց զայս բամբռամբ երգելը մեր ականջով լսեցինք» ասելով Խորենացին կը յաւելու. «Վահագնի համար երգին մէջ կ'ըսուէր, թէ վիշապներու հետ կը կռուէր և կը յաղթէր, և Հերակլի քաջութիւններուն շատ նման գործեր պատմէին զնմանէ։ Նաև աստուածացեալ ասէին զՎահագն, և թէ Վիրք զպատկեր սորա կանգնած էին և կը պաշտէին զոհիւք»։ Ըստ Խորենացւոյն, մինչև Աղեքսանդր մեծ՝ Տիգրանայ յաջորդեցին որդի ի հօրէ ութ թագաւորք—Վահագն, Առաւան, Ներսեհ, Զարեհ, Արմոգ, Բագամ, Վան և Վահէ։ Այս վերջինն ընդդիմանալով Աղեքսանդրի՝ կը սպանուի։ «Այնուհետև մինչև Վաղարշակայ թագաւորելն Հայոց վրայ, ասէ Խորենացին, ճշմարիտ ինչ չունիմ ի պատմել, քանզի շփոթութիւն տիրեց, այնպէս որ շատեր իրարու հետ կը մրցէին տիրել մեր երկրին, և այս պատճառաւ Արշակ մեծ դիւրաւ մուտ գտնելով Հայաստան՝ թագաւորեցուց զեղբայր իւր Վաղարշակ Հայոց վրայ»։

Այսպէս Խորենացին Վահէի մահուամբ կը գոցէ Հայկազանց պատմութիւնը, որ է նիւթ առաջին գրոց նորա, և իբր 180 տարուան անիշխանութեան միջոց պարապ թողլով յաջորդ գրոց մէջ կու գայ Արշակունեաց։

Սորա (այսինքն Տիգրանայ) որդի Բաբ, Տիրան, Վահագն, զորմէ ասեն առասպելք. Երկնէր երկին և երկիր, երկնէր և ծիրանի ծով. երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն. ընդ եղեգան փող ծուխ ելանէր, ընդ եղեգան փող բոց ելանէր, և ի բոցոյն պատանեկիկ վազէր. Նա հուր հեր ունէր. ապա թէ բոց ունէր մօրուս, և աչկունքն էին արեգակունք։ Զայս երգելով ոմանց բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք։ Յետ որոյ և ընդ վիշապաց ասէին յերգն կռուել նմա և յաղթել, և կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին։ Այլ ասէին զսա և աստուածացեալ, և անդ յաշխարհին Վրաց զսորա չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք։ Եւ սորա են զարմք Վահունիք։ Սորա (Վահագնի) Առաւան, առ-

րա Ներսեհ, սորա Զարեհ, սորա Արմոգ, սորա Բագամ, սորա Վան, սորա Վահէ։ Սա ընդվզեալ մեռանի յԱղեքսանդրեայ Մակեդոնացւոյ։

Ցայսմհետէ մինչև ցթագաւորութիւնն Վաղարշակայ ի Հայս՝ ոչ ինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ. քանզի շփոթ իմն ամբոխից լեալ՝ այր զօրամբ ելանէին տիրել աշխարհիս. և վասն այսորիկ դիւրամուտ ի Հայս լեալ Արշակ մեծ՝ թագաւորեցուցանէ զեղբայր իւր Վաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց։



## ԳԼՈՒԽ Ե.

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՄԱՐԻԲԱՍԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ:

*1. Մարիբասեան պատմութիւնը ծնունդ է քրիստոնէական ժամանակի: 2. Նամակ Վաղարշակայ եւ առաքումն Մար Իբասայ կեղծիք են: 3. Այս ենթադրութիւնը եւ զպարագայս նորա թելադրող պատճառը: 4. Զարմանալի պատահում մը: 5. Նինուէ քաղաքը չկար առ Վաղարշակաւ: 6. Թէեւ լինէր Նինուէ առ Վաղարշակաւ՝ ի հնուց մնացեալ դիւան կամ մատեան չկարէր լինել անդ: 7. Կարեւոր գիտելիք զքաղդէարէնէ եւ զասորերէնէ. 8: Նինուէի դիւանին քաղդէական մատեանը ո՞ր քաղդէարէնով գրուած էր: 9. Հին քաղդէարէն լեզուաւ մնացորդ գտնուա՞ծ է երբէք: 10. Բանք հնոց զԲերոսոսէ բաւական չեն ցուցանել՝ թէ հին քաղդէարէն մատենագրութիւն կար: 11. Նաբատեան երկրագործութիւն կոչուած գիրքն հին քաղդէական աղբեւր չէ: 12. Մար Իբաս ո՞ր ասորերէնով թարգմանեց: 13. Եզրակացութիւն: 14. Երից նահապետաց եւ Հայկայ ազգաբանութիւնը, զոր Մարիբասեան պատմութիւնն ի քաղդէական մատենէն առեալ կը դնէ՝ կեղծիք է: 15. Խորենացւոյն վկայութիւնը, թէ Աբիւդենոս կը յիշէ Հայկայ ազգաբանութիւնը՝ կը պարունակէ մեծ անտեղութիւն: 16. Խորենացին զԱբիւդենոս Եւսեբիոսէ միայն գիտէր: 17. Մարիբասեան պատմութիւնն զծագմանէ հայ ցեղին՝ թէ՛ ըստ ժամանակին (զկնի ջրհեղեղի) եւ թէ ըստ տեղւոյն (ի Բաբելոն)՝ հակառակ է լուսոյն, զոր կուտան մեզ արդի երկրաբանական, լեզուաբանական եւ պատմական տեղեկութիւնք: 18. Եզրակացութիւն. Հնութիւն հայ ցեղին: 19. Քաղդէական մատենին ընծայուած գաղափարք քրիստոնէական են, ոչ թէ քաղդէական-հեթանոսական: 20. Անդէպ է հաւատալ քաղդէական մատենի կամ տարեգրի մը մէջ Հայկայ նկարագրին պէս երկայն նկարագիր: 21. Եւս աւելի անդէպ է հաւատալ Հայկայ յաջորդներուն մանր պատմութիւնը քաղդէական դիւանին մէջ: 22. Ցատուկ անուանք ի պատմութեան Մար Իբասայ եւ ստուգաբանութիւնք եւս աւելի կասկածելի կը գործեն այն պատմութիւնը. Խոռխոռունի. Հարք: 23. Անդէպ է Մարիբասեան պատմութեան զՀայաստան ամպի ենթադրելն առ Հայկաւ եւ առ յաջորդօք նորա: 24. Քննութիւն զպատմութենէն Արամայ. Զարմանալի խոստովանութիւն մը: 25. Դիտողութեան արժանի այլ կէտ: 26. Առաջին, Երկրորդ, Երրորդ եւ Չորրորդ Հայք կոչմանց պատմական ծագումը: 27. Անուանք տուեալք Հայաստանի այլեւայլ ժամանակ: 28. Նինոսի*

*եւ Արամայ յաղթութիւնը. Այս պատմութեան բուն աղբիւրը:* 29. *Թէ Արամայ եւ Նինոսի թուականն ուստի՛ առնուած է:* 30. *Արայի վէպը:* 31. *Հայոց առասպելն զՇամիրամայ. Արայի վէպին բարոյական իմաստը:* 32. *Քսան եւ եօթն հայ իշխանք. Թէ ուստի՛ են Հայկակայ ապստամբութեան եւ Զարմայրի Տրովական պատերազմն երթալուն պատմութիւնները:* 33. *Զփախստենէ որդւոց Սենեքերիմայ ի Հայս. Հակասութիւն մը:* 34. *Դիտողութիւն զԲագրատունեաց:* 35. *Ժամանակագրական սխալ մը:* 36. *Զկործանմանէ պետութեան Ասորեստանի առ Սարդանապաղաւ. Այլ հակասութիւն:* 37. *Դիտողութիւն զՊարուրէ. Ցոյհաննէս կաթողիկոս:* 38. *Ցաջորդք Պարուրի. Այլ հակասութիւն:* 39. *Դիտողութիւն զպատմութենէ Տիգրանայ:* 40. *Այս պատմութեան գլխաւոր պարագաները որ անդէպ են:* 41. *Դարձեալ հակասութիւն:* 42. *Տիգրանայ եւ Աժդահակայ մէջ անցից անտեղութիւնը:* 43. *Մար Իբասայ ընծայուած պատմութիւնն զԱժդահակայ նմանութիւն է Հերոդոտոսի պատմութեան:* 44. *Դիտողութիւն զգերութենէն Մաքաց:* 45. *Վետայի առասպելը:* 46. *Ընդհանուր եզրակացութիւն:*

**1.** Այս է ահաւասիկ Հայկազանց պատմութիւնը, զոր ըստ Խորենացւոյն բերաւ Մար Իբաս Նինուէի դիւանէն առ Վաղարշակ։ Թէ այս պատմութիւնը վէպ է մանաւանդ, քան վաղեմի դիւանէ մը հանուած ստոյգ տարեգիր՝ այնպէս յայտնի է սկիզբէն մինչև վերջը, որ իբրև ազգային վաւերական պատմութիւն գնելով զայն առաջի լուսաւորեալ աշխարհի ոչ այլ ինչ կը շահինք՝ եթէ ոչ ցուցնել խորին տգիտութիւն պատմութեան, և յետին դիւրահաւատութիւն։ Արդարև անաչառ քննելով Մարիբասեան պատմութեան ներքին և արտաքին պարագաները՝ կը գտնենք զայն քրիստոնէական ժամանակի ծնունդ, որ չկարէ լինել հնագոյն քան զերկրորդ դար քրիստոնէութեան։ Այսմ ապացոյց է իբր թէ հեթանոսական անուններով և ոճով, բայց ըստ էութեան և պարագայից Ծննդոց գիրքէն առնուած պատմութիւնն զծագմանէ մարդկային ազգին յերից որդւոց Նոյի, զաշտարակաշինութենէ, զխառնակութենէ լեզուաց, զբաժանմանէ ազգաց և զազգաբանութենէ Յաբեթի, յորմէ Մարիբասեան պատմութիւն կու տայ սերել զՀայկ, ծանօթ ազգին իբրև հսկայ դիւցազն մանաւանդ քան իբրև նահապետ։ Մարիբասեան պատմութիւնք ստեղծող անձն, ո՛վ որ է՝ յետ երևակայելոյ զՆինուէ քաղաք դեռ կանգուն իբր 150-ին նախ քան զՔր. և գնելոյ անդ ի վաղնջուց մնացեալ դիւան, և հրամանաւ Աղեքսանդրի քաղդէարէնէ յունարէն թարգմանեալ և Հայոց նախագոյն ժամանակին պատմութիւնը պարունակող մատեան՝ այն պատմութիւնը յիշեալ դիւանէն հանել տալու յարմարագոյն զոք արդարև չէր կրնար գտնել քան զՎաղարշակ, Հայոց առաջին ար-

2. Նախ կը հարցուցանենք, թէ ուստի ունեցաւ Վաղարշակ Նինուէի դիւանին մէջ Հայոց պատմութիւն մը փնտռել տալու Արշակունի թագաւորը, զեղբայր Արշակայ, զոր հնարողն պատմութեան կը կարծէ տիրող ինչպէս Բաբելոնի՝ նոյնպէս Նինուէի։ Հուրդը, մինչև ղրկել զՄար Իբաս առ Արշակ այնպիսի աներկբայութեամբ, որպէս թէ ստուգիւ գիտէր, թէ կային հոն Հայոց պատմութիւնը պարունակող գրեան.—«Հրամայես(ցես) բանալ զդիւանդ արքունի առաջի առնդ... զի գտեալ զըղձալին եղբօր քո և որդւոյ՝ բերցէ *զստոյգն փութապէս*»։ Զայս ասացաք ենթադրելով, թէ իբր 150-ին նախ քան զՔր. կար Վաղարշակ անուն անձ մը, եղբայր Պարթևաց թագաւորին Արշակայ, ի նմանէ կարգեալ թագաւոր Հայոց և Միջագետաց. քանզի ինչ որ կը գրէ Խորենացին զՎաղարշակայ և զերկուց յաջորդաց նորա՝ չէ պատմական, որպէս տեսցուք յետոյ։ Բայց թողունք զայս առ այժմ։ Թողունք նաև Վաղարշակայ ընծայուած նամակին աւելորդ և անբնական յաւելուածները, որ նախակին անհարազատութիւնը կը մատնեն։ Ո՛չ ապաքէն աւելորդ և անբնական էր Վաղարշակայ՝ յիշեցնել Արշակայ, թէ էր «կրտսեր եղբայր նորա», և թէ «ի նմանէ կարգեալ էր թագաւոր Հայոց», պալ.ագաներ՝ որ արդէն ծանօթ էին Արշակայ։ Ոչինչ ընդհատ անբնական էր նաև անյայտ և անծանօթ բանի մը համար, որպիսի էր Հայոց պատմութեան գտնուիլն ի դիւանին՝ ասելն Վաղարշակայ ցեղբայր իւր. «Բաց զդիւանդ այս մարդուն, որպէս զի եղբօրդ ըղձալին գտնելով՝ ստոյգը բերէ փութապէս»։

3. Մասնաւոր դիտողութեան արժանի են սակայն Մար Իբասայ առաքման պարագաները, որ կը ցուցանեն, թէ այս առաքումն, հանդերձ պարագայիւք՝ պատմական պատճառէ մը թելադրուած կեղծիք է։ Սահակ Բագրատունի Հայոց պատմութիւն մը գրել կ՚առաջարկէ Մովսէսի Խորենացւոյ, որ արդարև զայնու ժամանակաւ առաջին և թերևս մի միայն կարող անձն էր յազգին այնպիսի գործ մը գլուխ հանելու։ Կերպով մը որ մեզ անծանօթ է՝ Մովսէս կը ստանայ իբր հին քաղդէական մատենէ մը առնուած կեղծ աղբիւր մը հնագոյն ժամանակի պատմութեան Հայոց։ Այս աղբիւրն հնարողին հարկ էր ցուցնել, թէ ինչ առթիւ, յո՛յր ձեռն և ուստի՛ ձեռք բերուած էր այն։ Քաղդէական հին մատեան մը ո՞ւր կրնար գտնուիլ, եթէ ոչ Բաբելոն կամ Նինուէ։ Աղբիւրն հնարողն այս վերջին քաղաքը կ՚ընտրէ իբրև տեղի քաղդէական մատենին, թէպէտ ի ժամանակին, յորում այս մատեանը գտնուած կը դնէ, այն է 150-ին նախ քան զՔր. առ Վաղարշակաւ՝ Նինուէ ի վաղուց անհետ եղած էր, և եթէ չէր ևս անհետ լեալ՝ յԱսորեստանեայց և

ի Քաղդէացւոց մնացեալ դիւան և մատեան չկարէին լինել անդ, որպէս տեսցուք ի ստորև. բայց աղբիւրն Հնարողը չկարաց և չէր կարող գիտել այս պարագաները. պատմական և բանասիրական գիտութիւնք այնր դարու չզօրէին այնչափ հեռուն երթալ։ Արդ՝ յետ գտանելոյ տեղւոյ քաղդէական մատենին՝ կը գտնուի նաև զայն անտի հանել տուող անձը, այն է Նինուէի կողմանց իշխող մեծին Արշակայ Պարթևի եղբայրը Վաղարշակ, որ ըստ Խորենացւոյն կամ ըստ բանից այն աղբիւրը հնարողին՝ ոչ միայն թագաւոր կարգեալ էր յեղբօրէն ի վերայ Հայոց և Միջագետաց, այլ և պատուէր ընկալեալ ի նմանէ՝ «քաջութեան և իմաստութեան հոգ տանել», և ինքն ևս լեալ ուսումնասէր՝ փափաք մեծ ունէր գիտել Հայոց ազգին անցեալը։ Եւ որովհետև քաղդէարէն մատենէ մը չկարէր օգուտ քաղել Վաղարշակ՝ այս դժուարութեան ևս հնարը կը գտնուի. նախ Աղեքսանդր Մակեդոնացի թարգմանել կուտայ զայն մատեան ի յոյն լեզու, և ապա յոյն և ասորի լեզուաց հմուտն Մար Իբաս թարգմանելով զայն ի յունէ յասորի՝ կը բերէ առ Վաղարշակ։ Ոչ միայն Վաղարշակ կրցաւ հասկանալ (այսպէս պարտ է ենթադրել) յունարէն կամ ասորերէն թարգմանութիւնը՝ այլև Խորենացին, որոյ միայն ձեռքն ինկաւ մին կամ միւսն յերկուց թարգմանութեանց անտի, կամ թերևս երկոքին ևս, յետ իբր 600 և աւելի ամաց, այնուհետև ոչ ուրուք ձեռքն իյնալով մինչև ցայսօր։

4. Այս հանճարեղ ենթադրութեան, այն է Վաղարշակայ թելադրութեամբ և Մար Իբասայ աշխատութեամբ Հայոց պատմութեան մը ստացման ենթադրութեան մէջ, կէտ մը կայ զոր պարտ է զարմանալի պատահում կոչել, եթէ պատահում է և ոչ մանաւանդ խորհուրդ, և որ յանգի ի մեծ գովեստ Խորենացւոյն և մեկենասայ նորին Սահակայ Բագրատունւոյ. քանզի վերոյիշեալ ենթադրութեամբ ի մէջ Վաղարշակայ և Սահակայ, ինչպէս նաև ի մէջ Մար Իբասայ և Մովսիսի՝ կը գոյանայ պանծալի համեմատութիւն մը. Սահակ իբրև եռանդուն փափաքող և թելադիր ազգային պատմութեան մը խմբագրութեան՝ լինի երկրորդ Վաղարշակ, և Խորենացին, իբրև յաջողակ և գործունեայ գրիչ այն պատմութեան՝ երկրորդ Մար Իբաս Կատինա, այսինքն սրամիտ կամ հնարագէտ։ (Տես և Վիքդ. Լանկլ. Հաւաք. պտմ. Հայոց. հտ. Ա. էջ 8։)

5. Մարիբասեան պատմութիւնը, որոյ բնագիրն անծանօթ է մեզ, ընդունելու համար իբրև արդարև հանեալ ի դիւանէն Նինուէի՝ պարտինք լինել նախ աներկբայ, թէ առ Վաղարշակաւ Նինուէ քաղաքը կը կենար իւրով բազմադարեան հնութեամբք, յորոց մին էր հարկաւ դիւանն, որ կենթադրուի մնացեալ անդ հարիւրա-

ւոր ամաց հետէ, այն է ի ժամանակէ անտի Ասորեստանեայց, Քաղդէացւոց և Պարսից։ Ստուգիւ գիտենք սակայն, թէ հարիւրաւոր ամօք յառաջ քան զՎաղարշակ չկար Նինուէ։ Հերոդոտոս, երբ 450-ին նախ քան զՔր. Նինուէի մօտէրէն անցնելով զաւերակս նորա անգամ չգտաւ. իսկ Քսենոփոն, քան զնա իբր 50 ամօք յետոյ Նինուէի անունն անգամ չի յիշեր, թէպէտ առ աւերակօք նորա բանակեցաւ. նոյնպէս ի ժամանակս արշաւանաց Աղեքսանդրի, երբ 180 տարի յառաջ քան զՎաղարշակ՝ չի յիշուիր այն աշխարհածանօթ քաղաքը։

6. Բայց Մարիբասեան պատմութիւնն ընդունելու համար իբրև արդարև հանեալ ի դիւանէն Նինուէի՝ բաւական չէ միայն ստուգիւ գիտել, թէ կար Նինուէ առ Վաղարշակաւ, այլ պարտ է գիտել նաև ստուգիւ, թէ կրնար գտնուիլ հոն հին Ասորեստանցիներէն կամ Քաղդէացիներէն մնացեալ դիւան կամ մատեան։ Ըստ արդի պատմական և բանասիրական ստոյգ տեղեկութեանց գիտենք սակայն, թէ ո՛չ Ասորեստանեայց և Քաղդէացւոց, և ոչ իսկ Մարաց և Պարսից ժամանակէն կրնար գտնուիլ հին մատեան և դիւան, այսինքն տարեգիր կամ մատենադարան (գրատուն), քանզի դիւան բառն այս երկու նշանակութիւնն ունի առ մեզ։ Ասորեստանեայք և Բաբելացիք կամ Քաղդէացիք, ինչպէս նաև նոցին դրացի արիական կամ հնդեւրոպական ազգեր՝ չունէին այբուբենական գիր և ոչ մատեան. գիր նոցա էին բևեռագիր կոչուած նշանք, իսկ դիւանք կամ մատեանք, եթէ արժան է այսպէս կոչել՝ քարինք և աղիւսք նոյն նշանագրօք։ Հայերէն սա հին բառերն՝ *արձանագրութիւն*, այսինքն քարի վրայ փորագրութիւն, և դաշինք *կռել*, որով, առ ի չգոյէ այլ ազգ գրութեան, դաշնադրութեանց ի քարի դրոշմուիլը կ'ակնարկուի՝ բաւական կը ցուցնեն, թէ Հայք ևս, ինչպէս նոցին դըրացիք Ասորեստանեայք, Մարք և հին Պարսք՝ այն հին ժամանակները ոչ այլով օրինակաւ գիտէին գրել, եթէ ոչ կռելով, այսինքն փորագրելով. ինչպէս նաև նշանագիր բառը, որ հին հայերէն. լեզուաւ գիր կամ տառ կը նշանակէ՝ բևեռագիր կ'ակնարկէ մանաւանդ քան այբուբենական գիր կամ տառ, որ համեմատութեամբ շատ նոր են ի մերում լեզուի նշանագրի մօք, առաջինը (գիր)՝ ըստ այս նշանակութեան, վերջինը (տառ)՝ բոլորովին նոր, յետ անկման լեզուին մուծուած։ Այբուբենական գիրն արդարև հին է, գէթ իբրև հազար ամօք յառաջ քան զքրիստոնէական թուականն, բայց առ Փիւնիկեցիս, որոց կը վերաբերի այս գիւտին առաջին գործածութիւնը, թերևս նոյն իսկ գիւտն, և յորոց առած են Եբրայեցիք առ Սամուէլիւ կամ առ Թագաւորօք։ Իսկ առ Քաղդէա-

ցիս և Ասորիս, որպէս և առ Պարսս այբուբենի գործածութիւնն համեմատութեամբ աւելի նոր է։ Ըստ Դարեհի և Քսերքսի սկսան Պարսիկք գիր և դիւան ունենալ, ինչպէս յայտնի է դիւան բառէն ևս, որ արիական է։

7. Խորենացին խօսելով զմատենէն, զոր որպէս թէ գտած էր Մար Իբաս ի դիւանի անդ Նինուէի՝ երկու սեմական լեզու կը յիշէ, քաղդէարէն՝ որով գրուած էր բուն մատեանը, և ասորերէն՝ որով Մար Իբաս թարգմանելով բերաւ այն մատենէն Հայոց վերաբերեալ մասը։ Նախ՝ քաղդէարէն կը կոչուի Ասորեստանի և Բաբելոնի կողմերը խօսուած հին լեզուն, որ և արևելեան արամերէն կը կոչուի. իսկ ասորերէն կը կոչուի հին Ասորւոց երկրին և Միջագետաց լեզուն, որ կը կոչուի հիւսիսային արամերէն։ Երկրորդ՝ քաղդէարէն կը կոչուի ասորերէնով և եբրայեցերէնով խառն այն գաւառական լեզուն, որ էր Հրէից կամ Պաղեստինու յատուկ յետ գերութեան, և որով գրուած են Եզրասայ և Դանիելի գրոց մէկ մասը, և ուրիշ հրէական գրեան, այսինքն Միշնա, Թարկում և Թալմուտ կոչուած գիրքերը. և այս պատճառաւ այս քաղդէարէնը կը կոչուի գրոց քաղդէարէն կամ թարկումեան և թալմուտեան քաղդէարէն, (chaldéen biblique, targumique, talmudique, syro-chaldaïque), և ասորերէն կը կոչուի վերջին կամ նոր ասորերէնը, որ յետ քրիստոնէութեան ծագկեցաւ և կը կոչուի քրիստոնէական արամերէն (aramaïsme chrétien, syriaque)։

8. Արդ կը հարցունենք. Նինուէի դիւանին քաղդէական մատեանը ո՞ր քաղդէարէնով գրուած էր. հի՞ն քաղդէարէնով, այսինքն արևելեա՞ն արամերէնով կամ հին Ասորեստանեայց և Բաբելացւոց քաղդէարէնո՞վ թէ Հրէից քաղդէարէնով։ Հին քաղդէարէնով գրուած չկարէ ենթադրուիլ, քանզի այն լեզուն այբուբենական գիր կամ դպրութիւն չունէր, և այն ժամանակէն մնացած այբուբենական գրով գրուած ամենևին չկայ։ Եթէ երբէք այն լեզուաւ գրուած է՝ բևեռագիր կոչուած նշանագիրներով գրուած է, և թերևս բևեռագիր արձանագրութեանց միոյ տեսակին լեզուն այն հին քաղդէարէնն է։

9. Արդարև կարծուած է, թէ հին Քաղդէացիք գիր և մատենագրութիւն ունէին, և թէ այն հին քաղդէական մատենագրութենէ բազում ինչ թարգմանուած էր ի հնումն ի յոյն լեզու։ Այսպէս Եւսեբեայ վկայութեամբ, ըստ Աղեքսանդրի Բազմավիպի, (որ էր յոյն մատենագիր յառաջնում դարու նախ քան զՔր.) Բերոսոս անուն քաղդէացի մատենագիր մը Աղեքսանդրի ժամանակ, «Ի տիս Աղեքսանդրի Փիլիպպեայ, κατ' 'Αλέξανδρον τοῦ Φιλίππου τὴν ἡλικίαν», հին

քաղդէարէնէն թարգմանեց այլևայլ գրեան, որ «ի Բաբելոնի բազում զգուշութեամբ պահէին յերկերիւր և ի հնգետասան բիւրոց ամաց, յորս (էր) գիր պատմութեանց զերկնից և զերկրէ և զծովէ և զնախակերտն արարչութենէ, և զթագաւորաց և զնոցուն իրաց և զգործոց, և զջրհեղեղէն» (Առ Եւսեբ. Քրոն. Ա. հտ.)։

Նաև Ցովսեպոս հրեայ պատմիչն զԲերոսոսայ ասէ, թէ ի հին (քաղդէական) մատենից առնլով գրեց մեր (Հրէից) ազգին վրայ հանգոյն Մովսէսի. «Զատուցեալ այժմիկ զառ ի Քաղդէացւոց մի ըստ միոջէ գրեալսն և զպատմեալս, յորս կայ բազում միաբանութիւն և առ այլ ևս մեր գիրս։ Եւ վկայ այսոցիկ Բերոսոս է, այր քաղդէացի յազգէ և երևելի յամենեսին՝ որ զխրատու և զիմաստութեամբ գայլին. քանզի և զաստեղագիտութեանն մատեանս և որ ինչ ի Քաղդէից ճարտարութիւն իմաստութեան պատմէր՝ նա եհան ի Յունաց լեզու։ Նոյն իսկ Բերոսոսն մտադիւր զհետ երթեալ առաջնոցն մատենից (Քաղդէացւոց)՝ վասն ջրհեղեղին և բնաջինջ մարդկան ապականութեանն լինելոյ՝ զնոյն ձև ըստ Մովսէսի պատմութեանն վիպագրեաց. և վասն արկղակերտ տապանին որով Նաւքոս (Նոյ) նախնին մերոյ ազգիս (Հրէից) ապրեցաւ, և երթեալ դադարէ ի գլուխս լերանց Հայաստան աշխարհին, և ապա մի ըստ միոջէ ի Նովքայ համարեալ և զնոցին ժամանակսն յաւելեալ՝ ի Նաբուպաղասարոս, ի Բաբելոնի և Քաղդէացւոց թագաւորն եկեալ հասանէ» (Առ Եւսեբ. Քր. Ա. հտ.)։

**10**. Բայց արդի քննադատութիւնը չկրնար պատմական յարգ ընծայել յանուն Բերոսոսի տրուած հատակոտորներու, և ոչ զնոյն ինքն Բերոսոս ճանաչել իբրև արդարև պատմական անձ և քաղդէացի։ Արդարև զարմանք է, որ արիական անուն կրող քաղդէացի մը, առ մեծաւ Աղեքսանդրիւ, ի քաղդէարէնէ յունարէն մատեաններ կը թարգմանէ, և այս մատեանները կը մնան անծանօթ աշխարհի, նա մանաւանդ կը կորսուին, և ապա յանկարծ, յառաջնում դարէ անտի քրիստոնէութեան՝ կը ծանօթանան ոչ իբրև ամբողջ, այլ իբրև հատակոտորք, հեթանոսական առասպելախառն գունով, եկեղեցական նպատակաւ գրող հեղինակաց ոմանց, որպիսի են Ցովսեպոս և Եւսեբիոս, իբրև հզօր ապացոյցք հաստատելու հին հրէական աւանդութիւններ։ Ապա, որպէս ասէ Րընան, հմուտն հին արևելեան մատենագրութեան, մանաւանդ սեմականին՝ «առողջ քննադատութիւն չկրնար իբրև վաւերական ընդունել՝ ինչ որ յոյն, գլխաւորապէս եկեղեցական պատմութիւնք կ՚ընծայեցունէ մեզ յանուն Բերոսոսի, Աբիւդենայ, Մանեթոնի, Սանքոնիաթոնի, իբրև մնացորդս հին արևելեան կորուսեալ մատենագրութեանց»։

**11.** Զարգիս արաբերէն մատեան մը գտնուեցաւ «Նաբատեան երկրագործութիւն» անուամբ։ Ըստ բանից այսր մատենի՝ Նաբատացի կոչուած շատ հին ազգ մը յարևելս՝ որպէս թէ ծաղկեալ մատենագրութիւն ունէր զմշակութենէ, զբժշկականութենէ, զբուսաբանութենէ, զբնագիտութենէ, զաստեղագիտութենէ և զայլ գիտութեանց, և թէ այս մատեան Նաբատացւոց մատենագրութենէն մնացորդ էր։ Ոմանք յեւրոպացի գիտնոց կարծեցին, թէ Նաբատացիք հին Քաղդէացիք էին, ուստի և այն մատեանն էր հին քաղդէական դպրութեան մնացորդ, արաբերէն թարգմանեալ, և աստի կամեցան հետևցնել, թէ առ հին Քաղդէացիս կամ Բաբելացիս և առ Ասորեստանեայս գոյր դպրութիւն և մատենագրութիւն։ Բայց յետոյ ճիշտ քննութեամբ տեսնուեցաւ, թէ Նաբատեան երկրագործութիւն անուանեալ գիրքն էր արաբացւոյ մը գործ առասպելախառն, որոյ մատենագրութեան թուականը չէ հին քան զԺ. դար յետ Քր., և թէ Նաբատացիք ոչ այլ ինչ էին՝ եթէ ոչ հին հեթանոս արաբացի ցեղ ի կողմանս Բաբելոնի կամ Պաղտատու։ (Մասբէրոյ, Հնախօս. արևել. ազգ. էջ 193)։

**12.** Նոյնպէս կը հարցունենք ասորերէնին համար. Մար Իբաս որ ասորերէնով թարգմանեց քաղդէական մատենէն Հայոց վերաբերեալ մասը և բերաւ առ Վաղարշակ. հին ասորերէնով, այսինքն հեւսիսային արամերէն կոչուած լեզուաւ, թէ նոր կամ Syriaque կոչուած ասորերէնով։ Հին ասորերէնով չէր կարող, քանզի նաև այս լեզուաւ հին գրուած ամենևին չկայ. հնագոյն արձանագրութիւնք որ գտնուած են Ասորւոց երկրին այլ և այլ կողմերը, գլխաւորապէս ի Բալմիրա՝ չեն հին քան զերկրորդ դար քրիստոնէութեան, և լեզուն նոր ասորերէն է կամ շատ մօտ նմին։ Իսկ եթէ Մար Իբասայ թարգմանութեան ասորերէնը նոր ասորերէն (Syriaque) էր՝ կը հետևի թէ Մար Իբաս յետոյ էր քան զԲ. դար քրիստոնէութեան։ Զարամէական լեզուաց և զդպրութենէ նոցա ընդարձակ խօսուած է ի Պատմութեան Սեմական լեզուաց Րընանի։

**13.** Արդ՝ որովհետև յառաջ քան զքրիստոնէական թուականն բաց ի Հրէից քաղդէարէնէն բնիկ քաղդէարէն, և յետ քրիստոնէութեան նոր ասորերէնէն ուրիշ ասորերէն դպրութիւն կամ գրել չկար, ինչպէս կրնար այնչափ հարիւրաւոր ամօք յառաջ քան զայն թուական քաղդէարէն լեզուաւ գրուած մատեան գտնուիլ ի Նինուէ, և ինչպէս Մար Իբաս, 150 ամօք յառաջ քան զքրիստոնէական թուականն, այն է իբր երեքհարիւր ամօք յառաջ քան զսկիզբն ասորական (syriaque) դպրութեան՝ կրցաւ ասորերէն

թարգմանել Հայոց պատմութիւնը, զոր գտաւ քաղդէարէնէ յունարէն թարգմանեալ մատենին մէջ։

Մարիբասեան պատմութիւնն ստեղծողը, որ անտարակոյս յետոյ է քան զերկրորդ դար քրիստոնէական թուականին, զոր օրինակ, չլինելով տեղեակ հին պատմութեան՝ կը կարծէր, թէ Վաղարշակայ ժամանակ Նինուէ կար. նոյնպէս չլինելով տեղեակ սեմական լեզուաց դպրութեան պատմութեան՝ կը կարծէր, թէ նոյն Վաղարշակայ ժամանակ և բազմօք իսկ յառաջ քան զնա կար քաղդէարէն և ասորերէն դպրութիւն, այսինքն թէ այն լեզուներով մատեաններ կը գրուէին. ուստի և նախ քաղդէարէն գրուած մատեան կը գնէ ի Նինուէ, կանգուն համարելով այս քաղաքը, և ապա այն քաղդէարէն գրուած մատենին յունարէն թարգմանութենէն Մար Իբասայ Հայոց պատմութեան ասորերէն թարգմանութիւն մը բերել կու տայ առ Վաղարշակ։ Այս այնպէս է՝ որպէս թէ ոք չգիտելով զպատմութիւն հայերէն դպրութեան և զժամանակ գիւտի հայերէն նշանագրաց՝ դարերով յառաջ քան զՍահակ և զՄեսրոպ ենթադրէր հայերէն գրուած մատեաններ կամ գիւաններ։

**14**. Մեր այս դիտողութիւնն զծագմանէ Մարիբասեան պատմութեան բաւական է ցուցանել, թէ այն պատմութիւնը Նինուէի դիւանէն հանուած գնել՝ հին ժամանակին, և առանձինն Քաղդէացւոց և Նինուէի պատմութեան՝ անտեղեակ ուրուք կեղծիք է, զոր բոլորովին կը հերքեն մեր այժմու ստոյգ տեղեկութիւնք զհանգամանաց ազգին և քաղաքին այնորիկ։ Եկեսցուք այժմ յայլ իմն դիտողութիւն, որ նոյնչափ և ևս աւելի յայտնի կը ցուցնէ, թէ Մարիբասեան պատմութիւնն յետին ժամանակի, ուստի և անհարազատ գործ է, ոչ թէ ստոյգ պատմութիւն հին քաղդէական ազգին միջոցաւ պահեալ և հասեալ մինչև առ մեզ։ Դիտողութիւնն զորմէ բանքս են՝ է զազգաբանութենէն Հայկայ, զոր, որպէս տեսաք ի վեր անդր ի բուն պատմութեան (էջ 95)՝ որպէս թէ Մար Իբաս գտաւ ի քաղդէական մատենի անդ դիւանին Նինուէի, ի Հայկայ դէպ ի վեր մինչև Յաբեթ, և դէպ ի վայր մինչև ցԱրայ գեղեցիկ, և զորոյ վերջին մասն, այն է ի Հայկայ մինչև ցԱրայ՝ Խորենացին կը ջանայ հաստատել նաև Աբիւդենոսի վկայութեամբ։

Ի քաղդէական մատենին, յորմէ Մար Իբաս, ըստ Խորենացւոյն, հանեց Հայոց հին պատմութիւնը՝ որպէս թէ յիշուած էին Զրուան, Տիտան և Յապետոսթէ, իբրև երեք առաջին նահապետք յորոց սերեցաւ ազգ մարդկան։ Յետ այս երից յիշուած էին անդ, ասէ Խորենացին, նաև սերունդք նոցա, և Մար Իբաս զմին միայն ի սերնդոց Յապետոսթեայ, այսինքն զնախահարս Հայկայ մի-

այն առաւ սա անուններով—Յապետոսթէ, Մերոգ, Սիրաթ, Թակլաղ, Հայկ։ Յայտնի է թէ այս ազգաբանութիւնը Ծննդոց է, քանզի Զրուան, Տիտան և Յապետոսթէ՝ Ծննդոց Սեմ, Քամ, Յաբեթն են։ Յետ Յապետոսթեայ յիշուած անուանք՝ Մերոգ, Սիրաթ, Թակլաղ՝ նոյնպէս Ծննդոց Գոմեր, Թիրաս և Թորգոմն են։ Սակայն յազգաբանութեան աստ երկու ինչ կայ դիտողութեան արժանի, որ ազգաբանութեան անհարազատութիւնը կը մատնէ։ Նախ՝ Ասորեստանցիք յայնպիսում հին ժամանակի, որպիսի կ'ենթադրէ Մար Իբաս՝ չէին կարող գիտել Զրուան անունը որ զրադաշտական է, ուստի և համեմատութեամբ նոր, և ոչ իսկ Տիտան անունը որ նոյնպէս համեմատութեամբ նոր և յունական է։ Երկրորդ՝ Մերոգն ու Սիրաթը հրէից Գոմեր և Թիրասն են տառերու փոփոխութեամբ։ Կ'երևի թէ Մար Իբաս, կամ այս անունն առնող անձը որ ով որ էր՝ չէ հին քան զերկրորդ դար յետ Քրիստոսի՝ կարծեցնելու համար, թէ վերոյիշեալ ազգաբանութիւնը Մովսիսական չէր, այլ բոլորովին տարբեր, այն է քաղդէական աղբերէ՝ փոխանակ Սեմայ և Քամայ ընտրած է հեթանոսական անունները Զրուան և Տիտան, իսկ զԳոմեր և Թիրաս տառերու շրջմամբ փոխած է ի Մերոգ և ի Սիրաթ։ Յետ այս երից անուանց, որ են Գոմեր, Թիրաս, Թորգոմ, զորս Ծննդոց ազգաբանութիւնը կը յիշէ իբրև սերունդ Յաբեթի՝ քաղդէական մատեանն, ըստ Խորենացւոյն, որպէս թէ կը յաւելոյր. Հայկ, Արմենակ, այլովքն հանդերձ մինչև ցԱրայ։

**15.** Խորենացին անուանեալ քաղդէական ազգաբանութեան այս վերջին մասն, այն է ի Հայկայ մինչև ցԱրայ գեղեցիկ՝ կամի հաստատել Աբիւդենոսի վկայութեամբ, որպէս թէ Աբիւդենոս ևս կը յիշէր Հայկայ սերունդն այսպէս. «Արայն գեղեցիկ՝ Արամեայ, Հարմեայ, Գեղամեայ, Ամասեայ, Արամայիսայ, Արմենակայ, (Հայկայ), որ եղև կենախուզ Բելայ»։ Խորենացին բերելով այս ազգաբանութիւնն իբրև յԱբիւդենոսէ՝ կը յաւելու. «Զայս մեզ Աբիւդենոս յիւրում առաջնում արձանականի ի մանր ազգաբանութեան ասէ, զոր աստ ուրեմն յետոյ ոմանք բարձին». այսինքն Աբիւդենոս կը պատմէ մեզ զայս իւր առաջին արձանականին ի մանր ազգաբանութեան, բայց զայս (Արմենակէն մինչև Արայ յիշուած կտորը) յետոյ ոմանք բարձին։ Եթէ չենք սխալիր՝ Խորենացին կամի ասել, թէ Աբիւդենոս ի պատմութեան իւրում յիշած էր Հայկայ սերունդը մինչև ցԱրայ. բայց յետոյ այս մասն ի պատմութենէ նորա դուրս ձգուեցաւ։ Կը հարցունենք սակայն. Աբիւդենոսի պատմութենէն այն մասն ի՞նչպէս կրնար դուրս ձգուիլ և ընդէ՞ր։

Դիցուք թէ Հայոց թշնամի մը կամեցաւ այն մասն Աբիւդենոսի պատմութենէն հանել. ի միջէ ձեռագիր օրինակէ միայն կարէր հանել զայն, այսինքն այն օրինակէն, զոր ինք գրեց կամ գրել տուաւ. միթէ կրնա՞ր Աբիւդենոսի բոլոր ձեռագիր օրինակներէն հանել—ամենուն. ապա թէ ոչ հարկ էր նմա Աբիւդենոսի պատմութեան բոլոր ձեռագիր օրինակներն որ աշխարհիս վրայ կը գտնուէին՝ ժողվել և ջնջել, և իւր ձեռագիր օրինակը միայն տարածել։ Եւ Խորենացին ինչպէս կրցաւ գիտնալ, թէ այն մասն Աբիւդենոսի պատմութենէն հանուած էր։ Դիցուք թէ Խորենացին ի միում ի հին ձեռագիր օրինակաց Աբիւդենոսի գտաւ այն ազգաբանութիւնը, և յայլում ձեռագիր օրինակի չգտաւ. որովհետև Խորենացին Աբիւդենոսի պատմութեան աշխարհիս վրայ գտնուած բոլոր ձեռագիր օրինակները չէր կարող ունենալ՝ անտեղի է ասել նորա, թէ Աբիւդենոս այն ազգաբանութիւնը գրեց, և այլք յետոյ բարձին զայն։

Խորենացին անուանեալ քաղդէական ազգաբանութեան հաստատութիւն տալու համար կամի վկայ կոչել երևելի հին պատմիչ մը, ինչպէս կարծուէր ան ատեն, թէ էր Աբիւդենոս, և կը դիմէ նորա վկայութեան։ Բայց որովհետև ի պատմութեան Աբիւդենոսի ոչ ոք պիտի գտնէր այն ազգաբանութիւնը՝ կը կանխէ ասել թէ յետոյ զայն ոմանք բարձին։ Աւելի դիւրին պիտի ըլլար հաւատք ընծայել Խորենացւոյն՝ եթէ ասէր. ես այն ազգաբանութիւնը գտայ ի միում ի հնագոյն օրինակաց Աբիւդենոսի, թէպէտ տեսայ ուրիշ նորագոյն օրինակ մը, ուր այն մասը թողուած կամ հանուած էր։

**16.** Զայս ասացաք ենթադրելով թէ Խորենացին Աբիւդենոսի պատմութեան բնագիրն ունէր։ Բայց գիտենք թէ Խորենացին զԱբիւդենոս գիտէր յԵւսեբեայ միայն, որ ի Քրոնիկոնին իւրում ինչպէս այլևայլ հեղինակներէ՝ նոյնպէս Աբիւդենոս անուն հին պատմագրէ մը կը բերէ Ծննդոց գրոց պատմութեան համաձայն հատուածներ զնախաջրհեղեղեան նահապետաց, զՆոյէ, զջրհեղեղէն, զաշտարակաշինութենէ և զխառնակութենէ լեզուաց։ Եւսեբեայ Քրոնիկոնն յառաջ քան զԽորենացին թարգմանուած էր հայերէն, և Խորենացին Եւսեբեայ այս հայերէն թարգմանութեան մէջ կարդացած էր Աբիւդենոսէ բերուած հատուածները։ Թէ Խորենացին զԱբիւդենոս Եւսեբեայ հայերէն թարգմանութենէն միայն գիտէր՝ անտի յայտ է, զի ուրիշ հատուած մը զոր ի պատմութեան իւրում (Գիրք Բ. գլ. Ը.) կը յիշէ՝ բառ առ բառ առած է Եւսեբեայ Քրոնիկոնին հայերէն թարգմանութենէն, հանդերձ սխալով թարգմանչին։ Եւսեբիոս, յետ յիշելոյ ինչ ինչ յԱբիւդենոսէ զՆաբուգոդո-

նոսորայ՝ Մեգասթենէս անուն պատմագրէ մը և՛ս նոյն Նաբուգոդոնոսորայ վերաբերեալ հատուած մը կը բերէ այսպէս. «Մեգասթենէս ասէ. Նաբուկոդրոսորոս որ ուժգնագոյն էր քան զՀերակղէս՝ ի Լիբէացւոց և յԻբերացւոց աշխարհն զօրաժողով լեալ հասանէր, և վանեալ վկանդեալ ընդ ձեռամբ նուաճէր, և զմասն մի ի նոցանէն յաջակողմն Պոնտոս ծովու տարեալ բնակեցուցանէր» և այլն։ Թարգմանիչը Մեգասթենէս բառը, որ մեծազօր կը նշանակէ՝ երբ ածական առած է, և կը թարգմանէ այսպէս. «Մեծազօրն, ասէ, Նաբուկոդրոսորոս», և այլն։ Այսպէս, *ասէ* բառն՝ առաջ յիշած Աբիւդենոսի կ'երթայ, ոչ թէ Մեգասթենէսի, ուստի և Աբիւդենոսի կը կարծուի հատուածը որ չէ։ Այսպէս առած է նաև Խորենացին։ Ահա Խորենացւոյն հատուածը. «Աբիւդենոս պատմէ այսպէս ասելով. Մեծազօրն Նաբուգոդոնոսոր բռնագոյն էր քան զՀերակղէս Լիբէացւոց. զօրաժողով լեալ հասանէր ի Վերիացւոց աշխարհն, և վանեալ խորտակեալ ընդ ձեռամբ նուաճէր, և զմասն մի ի նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովուն տարեալ բնակեցուցանէր»։ Ապա յայտնի եղաւ, թէ Խորենացին Եւսեբիոսի միջոցաւ միայն գիտէր զԱբիւդենոս, ոչ թէ բուն Աբիւդենոսի գիրք մը ունէր։ Եթէ Աբիւդենոս գիրք ունենար՝ այնպիսի հատուած մը պիտի չգտնէր հոն, քանզի ինչպէս տեսանք՝ այն հատուածը Մեգասթենէսի է, ոչ թէ Աբիւդենոսի։

**17.** Այս դիտողութենէն տեսնուեցաւ, որ Հայկայ ազգաբանութիւնն դէպ ի վեր մինչև Յապետոսթէ (Յաբեթ) յետին ժամանակի քրիստոնէի ուրուք տկար կեղծիք է Ծննդոց ազգաբանութեան վրայ հիմնուած, ոչ թէ քաղդէական. Նոյնչափ և աւելի տկար կեղծիք է ազգաբանութեան երկրորդ մասն, որ է ի Հայկայ մինչև Արայ։ Հիմա գանք Մարիբասեան պատմութեան այն կէտին, որ Հայ ազգը քան զքրիստոնէական թուականն իբր 2,200 տարի առաջ, Հայկայ 300 հոգիէ բաղկացեալ ընտանիքէն սերեալ, և զՀայկ ի Բաբելոն երբև զմին ի հսկայից անտի աշտարակաշինութեան կը դնէ։

Հեղինակ Մարիբասեան պատմութեան, որպէս Նինուէի և սեմական լեզուաց դպրութեան՝ նոյնպէս մարդկային ազգին ծագման, հնութեան, բաժանման և լեզուաց պատմութեան անտեղեակ կը թուի։ Ծննդոց պատմութիւնը միայն գիտնալով և զայն միայն գնելով ինքեան հիմն՝ կը կարծէ թէ սկիզբն ազգաց, հնագունից անգամ, ոչ անցանէ անդր քան զաշտարակաշինութիւնն, այսինքն՝ քան զամն 2,245 նախ քան զՔր.։ Նոյնպէս չգիտնալով, թէ ազգերը լեզուաւ և տեղեաւ ուրոյն և տարբեր բուներու ճիւղեր են, որոց սկիզբը նախապատմական է՝ կը կարծէ թէ հնդեւրոպական բունին

վերաբերեալ ճիւղ մը, որպիսի են Հայք՝ իւր գետնէն դուրս և իւր բունէն զատուած, իբր թէ ինքնօրէն առաջ եկած էր Բաբելոն, բոլորովին օտար և տարբեր բունոյ մը հողին վրայ։ Նոյնպէս ենթադրելով, թէ բոլոր մարդկային ազգը կը գտնուէր Բաբելոնի երկիրը Սենաար, երկնաբերձ աշտարակ մը շինելու զբաղեալ՝ կը կարծէ թէ այն ժամանակ, այսինքն իբր 2,240 տարի յառաջ քան զՔր.՝ Հայաստանի կողմերը և անտի անդր բոլոր երկիրը դէպ ի հիւսիս ամայի և անբնակ էր, այնպէս որ իբր 300 հոգիէ բաղկացեալ ընտանիք մը, որպիսի ասէ թէ էր ընտանիքն Հայկայ՝ կրցաւ բռնել բոլոր այն երկիրը, և հետզհետէ բազմանալով լնուլ զայն դէպ ի հիւսիս։ Այս պատմութիւնը կամ մանաւանդ ենթադրութիւնն՝ անցեալ դարերու մէջ կրցաւ իբրև ճշմարիտ կամ գէթ իբր հաւանական ընդունուիլ. բայց զարդիս, մանաւանդ ի վերջին 20 կամ 25 ամաց հետէ՝ դրական գիտութիւնք զծագմանէ, զհնութենէ և զբաժանմանց մարդկային ազգին այնպիսի և այնչափ լոյս տուած են, որ այս խնդրոց վրայ հին վարդապետութեանց կամ կարծեաց շատերը եթէ ոչ բոլորովին ջրուած՝ գէթ մեծապէս փոխուած կամ չափաւորուած են։ Մարդկային ազգին վերաբերեալ ուրիշ խնդիրներ թողլով որ հոս ուղղակի չեն պատկանիր մեզ՝ առնունք միայն ինչ որ երկրաբանութիւնը, պատմութիւնը և լեզուաբանութիւնը յայտնած են զհնութենէ և զբաժանմանց մարդկային ազգին։ Ոչինչ այնպէս յայտնի և որոշ կը ցուցանէ մարդկային ազգին հնութիւնն՝ ինչպէս երկրաբանութիւնը։ Այս գիտութեան դոյզն ինչ տեղեկութիւն ունեցողք գիտեն, թէ երկրիս կեղևը կը բաղկանայ այլևայլ խաւերէ, որ հետզհետէ կազմուած են հազարաւոր դարերով, և թէ այս խաւերէն շատերը, մանաւանդ վերջիններն, կը պարունակեն այլևայլ տեսակ գործարանաւոր մարմնոց, այսինքն տնկոց և շնչաւորաց քարացեալներ։ Այս կը ցուցնէ, թէ այս գործարանաւոր էակներն, որ այս ինչ խաւին վրայ կ՚ապրէին ժամանակաւ, երբ երկրաբանական յեղափոխութեամբ մը այն խաւին վրայ ուրիշ խաւ մը եկաւ՝ այս նոր խաւին տակ մնալով քարացան։ Իւրաքանչիւր խաւ ոչ միայն անգործարան նիւթոց, այլ և ի նմա գտնուած գործարանաւոր մարմնոց կազմութեան և բաղադրութեան կողմանէ տարբեր է ի հնագունից քան զնա։ Խաւ մը որչափ աւելի մօտ է երկրիս երեսին՝ այնչափ աւելի բազմազգի և աւելի զարգացեալ են գործարանաւոր մարմինք որ ի նմա։ Երկրաբանք ընդհանրապէս կը հաստատեն նաև, թէ իւրաքանչիւր խաւի թէ անգործարան նիւթը և թէ ի նմա գտնուած գործարանաւոր մարմինք՝ բնականապէս փոխուած են ի միջոցի հազարաւոր դարուց

այլեւայլ երկրաբանական յեղափոխութեամբք, որ երկրիս այն ատենուան երեսին վրայ գործուեցան բնական օրինաց ազդեցութեամբ։ Երկրիս այժմու մակերեւոյթը կամ վերջին խաւը կազմուած է յետ վերջին երկրաբանական յեղափոխութեան, նոյնպէս հարիւրաւոր, թերեւս հազարաւոր դարեր առաջ։ Որովհետեւ երկրիս ոչ միայն վերջին, այլ և քան զնա շատ հին խաւերէն ոմանց մէջ անգամ, շնչաւորաց ի վաղուց ջնջուած տեսակաց, ինչպէս մամմութի, մաստոթոնի և այլոց մնացորդներուն հետ կը գտնուին նաեւ մարդու մնացորդներ, զորօրինակ մարդու ոսկրոտի և մարդու ձեռօք կամ արուեստիւ շինուած քարեղէն, ոսկրեղէն և մետաղեայ գործիք, զէնք և զարդք, և որովհետեւ այն խաւերն յորս այս մնացորդք կը գտնուին, հազարաւոր դարերով հին են քան մարդուս ստեղծման տրուած սովորական թուականն՝ — ապա կը հետեւի թէ մարդ կոչուած տեսակ կայ երկրիս վրայ ոչ թէ 6 կամ 7 հազար տարիներէ հետէ, այլ թերեւս նոյնչափ հազար և տասնապատիկ ևս աւելի դարերէ հետէ։ Եւրոպայի այլեւայլ կողմերն, ինչպէս Գաղղիա, Բելգիա, Սկանտինաւեան երկիրները գըտնուած մարդկային անթիւ մնացորդներէն, որ այս վերջին 20 կամ 25 տարիներու մէջ մեծ խնամով երեւելի գիտնոց ձեռօք ժողովուած և Եւրոպայի թանգարաններուն մէջ պահուած են՝ կը տեսնուի թէ Եւրոպայի կողմերն անգամ, յառաջ քան զվերջին երկրաբանական յեղափոխութիւնն, կամ ըստ երկրաբանից չորրորդական և երրորդական կոչուած ժամանակներ՝ մարդ արարածը կը գտնուէր, թէպէտ այն մարդիկ, ինչպէս յոսկերաց, մանաւանդ ի ձեւոյ գանկաց, նաև ի գործեաց և ի սովորութեանց նոցա կը տեսնուի՝ Ափրիկէի և Աւստրալիոյ այժմու վայրենի մարդոց շատ նման էին։ Տարակոյս չկայ թէ, ասեն գիտունք, երկրիս ուրիշ մասերն ևս — Ասիա, Ափրիկէ, Ամերիկա և Աւստրալիա, այսպիսի հին բնակիչներ ունեցած են յայնմ նախաւոր ժամանակին՝ եթէ այն կողմերն յիշեալ ժամանակներ ցամաք և բնակելի էին։ Մեկնիչք և աստուածաբանք այլեւայլ մեկնութիւններ տալով այս մնացորդներուն՝ մարդկային ազգին հնութիւնը քան զՋրհեղեղն անդր չեն անցուներ, բայց և այնպէս մարդկային ազգին ամբաւ հնութիւնն արդի գիտութեան երեւելի գիւտերուն կարգն է։ Այս նիւթին վրա աւելի ընդարձակ տեղեկութիւն կրնայ առնուիլ մեր ժամանակին երեւելի բնագիտաց գրուածներէն, յորոց միջի իբրեւ պարզ և դիւրիմաց յիշատակութեան արժանի են գրուածք Պիւհների։ Բայց թողունք երկրիս ներքին խաւերը. նոյն իսկ երկրիս այժմու երեսին վրայ մարդկային ազգն ունի ամբաւ հնութեան երեւելի նշաններ։

Երկրիս այժմու երեսին վրայ ցրուած մարդկային ազգին ամբաւ հնութիւնը ցուցնող շօշափելի փաստերէն մին լեզուներն են։ Գիտունք Ասիոյ և Եւրոպայի ծանօթ լեզուներն միայն քննելով՝ յայտնեցին զարմանալի իրեր, որ նոր լոյս ծագեցին մարդկային ազգին նախնաւոր պատմութեան վրայ։ Հիմա ապացուցուած է, թէ լեզուն ես, ուրիշ բնական իրաց պէս, հարիւրաւոր դարերով յառաջ վարած է զիւր բնական ընթացս։ Բնական իրաց ձայներու նմանութենէն առնլով իւր ծնունդը՝ լեզուն հասած է այն այլևայլ հասակներուն, զորս լեզուաբանութիւնը կը գտնէ յայլևայլ տեսակ լեզուս, առանց քերականութեան չինարէնէն մինչև կատարեալ քերականութեամբ յղկեալ հնդեւրոպական լեզուներ։ Բայց լեզուաց քննութիւնը ոչ միայն զկենսաբանութիւն նոցա, այսինքն զեղանակ ծագման և զարգացման նոցա կը ցուցնէ մեզ, այլև մարդկային ազգին աշխարհագրական և ցեղային բաժանման վրայ կը յայտնէ կարևոր իրեր, այսինքն թէ մարդկային ազգը կը բաժնուի այլևայլ ընտանիք կամ բուն, և թէ իւրաքանչիւր բուն իւր ճիւղերովն ունի իւր յատուկ գետինը երկրիս վրայ, այնպէս որ լեզուի մը լեզուաց ո՛ր բունին վերաբերելը գիտնալով կրնանք առանց վարանելու ասել, թէ այն լեզուն խօսող ժողովուրդը մարդկային ո՛ր բունին կը վերաբերի և աշխարհագրապէս երկրիս ո՛ր կողմը կը բնակէր։

Երկրիս այժմու երեսին վրայ բնակող մարդկային ազգին հնութիւնը և ցեղային և աշխարհագրական բաժանումները կը հաստատուին ոչ միայն լեզուաբանութենէ, այլև պատմութենէ։ Ամէն ազգի աւանդութիւնք, նոյն իսկ եբրայական, կը վկայեն, թէ մարդկային վայրենի կամ ստորին ցեղեր անծանօթ ժամանակներէ հետէ բռնած էին երկրիս բոլոր երեսը։ Հին և նոր ժամանակներ երկրիս ո՛ր մասը որ քաղաքակիրթ ազգեր գացին՝ գտան միշտ վայրենի ցեղեր, զորս ջնջեցին և որ ի վէպս այն հին քաղաքակիրթ ազգաց կը յիշուին իբրև հսկայք երկրածինք, այլևայլ անուամբք, որպէս՝ Ենակիմ, Զամզումիմ, Տիտանք, այլովքն հանդերձ, երբեմն նաև իբրև ճիւաղներ։ Երկրագունտիս այն կողմերն, ուր մինչև վերջին քանի մը հարիւր տարիներ քաղաքակիրթ ազգեր գացած չէին, ինչպէս հարաւային և միջին Ափրիկէ, Ամերիկա, Աւստրալիա, Ովկիանեան կղզիներ՝ գտնուեցան նոյնպէս և կան տակաւին այն նախկին մարդկութենէն մնացորդներ, որ թէպէտ տարբեր տարբեր յատկութիւններ ունին, զորօրինակ, քաղցրաբարոյութիւն՝ Անդիլեանք, գազանութիւն՝ Ասամի և Պոռնէոյի բնակիչք, յետին վաւաշոտութիւն՝ Դափդցիք՝ սա կողմանէ ամենեքին միօրինակ են,

զի առանց արտաքին օգնութեան չեն կարող զարգանալ և լինել յառաջադէմ ի քաղաքակրթութեան և յուսմունս: Այս վայրենի ցեղք զիւրեանց անցեալն բնաւ յիշատակ չունին, և ոչ վասն ապագային իւրեանց յոյս, այլ իւրեանց ներկայ նիւթական կեանքը միայն ողորմելի կերպով գիտեն հոգալ: Այս ցեղերուն սկիզբն այնպէս հին է, որ զնոցանէ տեղեկութիւն ոչ այնչափ պատմութենէ, որչափ երկրաբանութենէ պարտինք ապասել: Ընդհանրապէս այս ստորին ցեղերն առ սակաւ սակաւ անհետ եղած են, ուր որ միանգամ մուտ գտած են քաղաքակիրթ ազգեր կամ գաղթականք նոցա, ինչպէս անհետ լինին վայրենի տունկք՝ ուր ընտանի տունկեր կ'սկսին մշակուիլ:

Բայց մարդկային ազգը, երկրիս այժմու երեսին վրայ, վայրենի կամ ստորին ցեղերէ միայն չի բաղկանար. եղած են նաև անծանօթ ժամանակներէ հետէ քաղաքակիրթ կամ ազնիւ ցեղեր: Այս ցեղերուն ևս սկիզբը նախապատմական է, և միոյ մասին նոցա, այն է շատ հին ժամանակ քաղաքակրթելոց՝ քաղաքակրթութեան սկիզբն ևս անծանօթ է մեզ. այնպէս որ այն ազգերը, զորս մեք իբրև առաջին քաղաքակիրթ ազգեր գիտենք՝ ի սկզբան պատմական ժամանակին, այսինքն իբրև չորս կամ հինգ հազար տարի առաջ՝ արդէն բարձր աստիճանաւ արուեստներու, գիտութեանց, քաղաքային վարչութեան, մշակեալ լեզուի և գրութեան անգամ հասած էին: Այս հնագոյն քաղաքակիրթ ազգերն են—Չինացիք՝ յարևելեան Ասիա, Քամեանք՝ յարևմտեան Ասիա, ինչպէս Քանանացիք (Փիւնիկէ), և Քուշեանք՝ ի միջին Ասիա և հիւսիսային արևելեան Ափրիկէ, ինչպէս հին Բաբելացիք, Եթովպացիք և Եգիպտացիք: Այս ազգերուն մէջ մեծագործութիւն (մեծամեծ հսկայաձև շէնքեր) և մեքենական արուեստք աւելի ծաղկած էին քան քաղաքագիտութիւն և զինուորութիւն, բայց վարչութեան մէջ այս ազգերը գրեթէ այնպէս յառաջադէմ էին ինչպէս Հռոմայեցիք և արդի եւրոպական ազգեր: Իսկ գիր ունէին երեք ձևով ևս—մեհենական (Եգիպտացիք), գաղափարագրական (Բաբելացիք. բևեռագիրք), և ձայնական կամ այբուբենական (Փիւնիկեցիք): Այս ազգերն, այսու քաղաքակրթութեամբ իւրեանց, կային քան զքրիստոնէական թուականն երեք կամ չորս հազար տարի առաջ: Քամեանց և Քուշեանց քաղաքակրթութիւնն անհետ եղած է առաջի քաղաքակրթութեան սեմական և մանաւանդ հնդեւրոպական կամ արիական ազգաց, որ յետոյ են քան զնոսա: Ի Չինաստան միայն մնացած և մինչև առ մեզ հասած է քաղաքակրթութեան այն հնագոյն ձևն. իսկ Եգիպտացիներէն, Փիւնիկեցիներէն և Բաբե-

լացիներէն ունինք միայն հատակոտորներ զորս եւրոպական մեծամեծ ազգեր իբրև պատուական գանձ կը ժողվեն և կը պահեն։

Քաղաքակիրթ կամ ազնիւ ցեղերու միւս մասին, այն է Սեմականաց և Արիականաց սկիզբը նոյնպէս նախապատմական է։ Այս ցեղերուն հնագոյն աւանդութեանց նայելով գիտունք կը կարծեն, թէ նախկին բնակութիւնը կամ բուն հայրենիք սոցա էր Իմաուս (Հնդկաստան), ուստի հաւանականապէս մեծի իրիք բնական յեղափոխութեան պատճառաւ գաղթելով ելած և բռնած են — Սեմականք՝ միջին Ասիոյ հարաւային արևմտեան մասը (Միջագետք, Ասորիք, Արաբիա, Փոքր Ասիոյ հարաւային եզրը), իսկ Արիականք կամ Հնդեւրոպականք՝ ի հիւսիսոյ նոցա, ի Հնդկաց կամ Տիգրիսի արևելեան հովտէն մինչև ի ծագս Եւրոպայ։ Երկրիս այս մասերն են սեպհական տեղիք կամ յատուկ գօտիներ, յորս յանծանօթ ժամանակաց հետէ մինչև ցայսօր կը բնակին այս երկու ցեղք։ Սեմականք և Արիականք, ի սկզբան ստորին քան զՔամեանս և զՔուշեանս (Փիւնիկեցիս, Բաբելացիս և Եգիպտացիս) մեծագործութեան, մեքենական արուեստից և վարչութեան կողմանէ, սակայն գեր ի վերոյ քան զնոսա, մանաւանդ Արիականք, զօրութեամբ և քաղաքագիտական և զինուորական հանճարով յետոյ կը գերազանցեն զՔամեանս և զՔուշեանս նաև մեքենական արուեստից և վարչութեան կողմանէ մինչև ցայսօր։ Այս երկու ազնիւ ցեղերուն (Սեմականաց և Արիականաց) գլխաւոր յատկութեանց մին ևս է զազգ մարդկան ի միութիւն ածելու միտումը։ Սեմական ցեղն, իւր տեսական գաղափարին համեմատ՝ այս միութեան գործը ջանացած է կատարել կրօնիւք (միաստուածու.թեամբ), արիական ցեղն ընդ հակառակն, իւր գործնական հանճարոյն հետևելով գործնական կերպով, այսինքն ի սկզբան՝ աշխարհակալութեան, և ապա՝ կրթութեան միջոցաւ։ Արդարև մասնաւոր դիտողութեան արժանի է, զի աշխարհիս մէջ երևելի կրօնք, որպէս հրէութիւն, քրիստոնէութիւն և մահմետականութիւն՝ Սեմականներէ են, ուր մեծամեծ աշխարհակալութիւնք գործուած են ընդհանրապէս ի ձեռն արիական կամ հնդեւրոպական ազգաց։

Լուսաւորութեամբ մանաւանդ քան աշխարհակալութեամբ ազգերը բարոյապէս միացնելու գործն այս վերջին դարերուն պահուած էր, և կը կատարուի հետզհետէ եւրոպական ազդեցութեամբ գրեթէ բոլոր աշխարհի վրայ, հնդեւրոպական (լատին և գերմանական կամ սաքսոն) ցեղերու միջոցաւ, ինչպէս որ իբր քսան կամ քսան և հինգ դար առաջ եղաւ ուրիշ հնդեւրոպական ցեղի մը (Յունաց) միջոցաւ։

Քաղաքակիրթ կամ ազնիւ ցեղերէն վերջիններուն, այն է Սեմականաց և Արիականաց գաղթականութեան վրայ գիտունք հետևեալ տեղեկութիւնը կու տան, որ եթէ ոչ բոլորովին՝ գէթ մեծաւ մասամբ ուղիղ է։ Նախ՝ ըստ հնագոյն աւանդութեանց Սեմականաց (Ծննդոց գրոց)՝ այս ցեղը (Սեմականն) հիւսիսէն և հիւսիսային արևելքէն եկող արիական ցեղերէ մղուելով իւր առաջին գաղթականութեան երկրէն, որ էր Ուր—գաստիմ (Արփաքսադ), այն է Կորդուաց երկիրը կամ Արմենիա՝ կ'սկսի գաղթել դէպ ի հարաւ (Ասորւոց երկիրը)։ Այս առաջին գաղթականութենէն, որում սեմական աւանդութիւնն Արամ կամ Արամէական անունը կու տայ՝ մաս մը, այն է Յոկտանեանք (Արաբացիք) բաժնուելով կ'երթան դէպ ի հարաւային արևմտեան թերակղզին, յԱրաբիա։ Վերջին սեմական գաղթականութիւնն ըստ եբրայական պատմութեան, որ Թարայեան գաղթականութիւնն է՝ Միջագետք եկաւ, և յորմէ մաս մի զԵփրատ անցնելով հաստատուեցաւ Քանանացւոց երկրին սահմանները։ Գետն անցնելուն համար եբրայեցի կոչուած այս գաղթականութեան երևելի խումբերէն մին էին Քանանացւոց երկիրը մտնող Աբրահամեանք կամ Իսրայելացիք, որոց յատկացաւ եբրայեցի անունն, ընդ որով պէտք է հասկնալ նաև այս վերջին սեմական գաղթականութեան միւս ցեղերն, որ են Մադիանացիք, Մովաբացիք, Իսմայելացիք և յայնկոյս Եփրատայ բնակող ուրիշ ոչ-քանանացի ցեղեր։

Սեմականաց գաղթականութեան հետ սկսած, մանաւանդ թէ առաջին մղումը տուած է նոցա՝ արշաւանք Արիականաց դէպ ի հարաւ։ Այս յանդուգն և պատերազմող (արիական) ցեղն զհայեցուած իւր թուի ուղղեալ ի վերայ այն Քուշեանց, որ ի վաղուց հաստատեալ էին ի հարաւային արևելեան կողման միջին Ասիոյ, այն է ի Բաբելոն։ Այսպէս Բաբելոնի և Ասորեստանի տիրող մեզ ծանօթ վերջին ցեղն հաւանականապէս արիական էր, ինչպէս կը տեսնուի Նինուէի և Բաբելոնի աշխարհակալ թագաւորաց անուններէն։ «Զգիտնալով այս աշխարհակալաց լեզուն, որ թերևս իսպառ կորուած է—ասէ Ռընան (Պատմ. սեմ. լեզ. 62)—յանուանց նոցա միայն ըստ բաւականին կը տեսնենք, թէ այն աշխարհակալք ի բնէ սեմական չէին։ Սեմական անուն մը ճանչնալ շատ դիւրին է։ Թագղաթփաղասար, Սենեքերիմ, Ասորդան, նոր անուանք, որ նախ և առաջ յականջս ժամանակակցաց Եսայեայ հնչեցին՝ եբրայերէն, փիւնիկերէն, ասորերէն, արաբերէն, միով բանիւ սեմական լեզուաց բնութենէ և յօրինաց բոլորովին դուրս են։ Որք միանգամ յարդի գիտնոց փորձեցին սեմական լեզուօք մեկնել այն անունները՝ չյա-

ջողեցան. ընդհակառակն պարսկերէնով մեկնել փորձելով ուելլ մօտեցան այն անուանց ճշմարիտ ստուգաբանութեանն։ Բայց եթէ ոչ այն աշխարհակալաց ցեղը՝ գէթ յաջորդք նոցա, որ բոլոր Ասիոյ, նաև Ափրիկէի հիւսիսային մասին տիրեցին մինչև Արաբացւոց (Մահմետի) աշխարհակալութիւնը՝ կարգաւ արիական էին, ինչպէս Մարք և Պարսք, ապա Յոյնք, և յետ նոցա Հռոմայեցիք, որպէս և այսօր երկրիս հինգ մասանց ևս՝ իշխանութեամբ կամ ազդեցութեամբ տիրող՝ նոյն արիական կամ հնդեւրոպական ցեղն է, այն է քաղաքակիրթն Եւրոպա։

**18.** Այս է ըստ արդի գիտնական հետազօտութեանց մարդկային ցեղերուն համառօտ պատմութիւնը։ Այս պատմութենէն կը տեսնուի, թէ ինչպէս, թող վայրենի ցեղերը որ պատմութիւն չունին՝ ուրիշ իրարմէ անկախ և ուրոյն ազնիւ ցեղեր անծանօթ ժամանակներ երկրիս ամենայն կողմերը բռնած և ապա յընթացս յոլով դարուց բազմանալով այլևայլ ճիւղեր բաժնուած են, յորոց ոմանք կորսուած են, այլք կան մինչև ցայժմ։ Արդ՝ ազգերու կազմութեան այս հին և երկայն ժամանակին մէջ հայ ցեղն ո՞ւր էր և ո՞ւր կրնանք գտնել զնա։ Եթէ Հայք հնդեւրոպական են, (որպէս և են իսկ նոյնչափ ստուգիւ՝ որչափ ստուգիւ հնդեւրոպական էին և են Մարք, Պարսք, Յոյնք, Լատինք, գերմանական և սլաւեան ցեղեր), ոչ այլուր էր և կրնայ գտնուիլ հայ ցեղն՝ եթէ ոչ ի մէջ համացեղից իւրոց հնդեւրոպական ազգաց և յերկրի նոցա։ Այս ազգաց մէջ և ընդ նոսա՝ իւր առանձին բարբառովն և ցեղային յատկութեամբ կը զարգանար հայ ցեղն՝ լինել հնդեւրոպական ճիւղ մը, մինչև եղև իսկ արդեամբ այնպիսի, և ի բազում յեղափոխութեանց և ի վտանգաց կորստեան ապրելով եկն, անծանօթ ժամանակ, ի վերջին բնակութիւն իւր յերկիրն Արարատայ, ուր կը գտնենք զնա առաջին անգամ առ Սենեքերիմաւ իբրև առանձին թագաւորութիւն յիշուած ի ժամանակակից պատմութեան Հրէից և յազգային աւանդութեան (էջ 39)։

Ապա հայ ազգը կամ ցեղն յառաջ բերել ի Հայկայ, իբրև Յաբեթի ուղղումն սերունդէն նահապետէ մը, որ որպէս թէ աշտարակաշինութեան ատեն Բաբելոն կը գտնուէր՝ նմանողութիւն է ազգաբանութեան Ծննդոց, որ իւրաքանչիւր ազգ Նոյի երեք որդւոց սերունդէն նահապետէ մը յառաջ կը բերէ։ Թէ այն ազգաբանութեան, նկատելով մանաւանդ պատմութեան պարագաները, կրնա՞յ պատմական հիմ ընծայուիլ թէ ոչ՝ թողունք այս խնդիրը. հայ ցեղն, իբր ճիւղ հնդեւրոպական արմատոյ, իւր բնական, այն է արիական հողէն դուրս, սեմական երկիր մը՝ Բաբելոն բուսած

ենթադրել՝ ըստ արդի գիտնական սկզբանց զպատմութենէ ծագման և զարգացման մարդկային ազգին, այնպէս անտեղի է, ինչպէս անտեղի է հասարակածի տունկ մը ընդ սառուցեալ գօտւով բուսեալ գնել։

**19.** Քաղդէական մատեանն, ըստ Մարիբասայ, Խորենացւոյն վկայութեամբ, աշտարակաշինութիւնը յիշելով՝ այն գործին ձեռնարկող հսկաներուն համար ասէ. «Ողացեալ *ամբարտաւանութեամբ* ծնեան *զամբարիշտ* խորհուրդ աշտարակաշինութեան»։ Աշտարակաշինութիւնն *ամբարտաւանութիւն* և *ամբարիշտ խորհուրդ* կոչել Գրոց գաղափար է. նոր ապացոյց, թէ այն գրուածը քրիստոնէի գործ է մանաւանդ քան նախնի հեթանոսի, մանաւանդ քաղդէացւոյ։

**20.** Ոչինչ ընդհատ անտեղի է նաև քաղդէական դիւանի կամ տարեգրի մը մէջ մուծուած գնել այնպիսի մանր նկարագիր մը, որպիսի է նկարագիր Հայկայ անձնական յատկութիւններուն, փախստեան, հալածման նորա ի Բելայ, փոփոխ պատգամաւորութեան, պատերազմին և յաղթութեանն։ Բայց թող այն նկարագրին մանր և մեծաւ մասամբ անտեղի պարագաները, որ տարեգրի կամ դիւանի մը մէջ չէին կրնար մտնել, թէև այնպիսի դիւան կամ տարեգիր արդարև գտնուէր առ Ասորեստանեայս՝ մեծ դիւրահաւանութիւն է հաւատալ, թէ Ասորեստանի թագաւոր մը փախստական Հայկի մը ետևէն ինկաւ բիւրաւոր զօրօք ի Նինուէէ մինչև Հայաստան, այսինքն Վանայ կողմերը, որպէս թուի ակնարկել պատմութիւնն, մանր ձկամբք աղի ծովակ յիշելով. ճանապարհ՝ զոր ի հատանել անցանել այնչափ զօրօք, մանաւանդ այն ժամանակ՝ ամիսներ պէտոյ էին։ Ո՞րչափ յիմար պարտէր լինել Բէլ, մինչև թողուլ ամիսներով զիւր մայրաքաղաք և այնչափ մղոն հեռուն երթալ ահագին բանակաւ՝ ի նուաճել կամ հնազանդեցնել 300 հոգիէ բաղկացեալ գաղթական խումբ մը, որոյ կէսն տղայք և կանայք էին։ Սա ևս կը հարցունենք, թէ ի Նինուէէ մինչև Հայաստան այն ընդարձակ երկիրն այն ատեն շէն էր քաղաքներով և գիւղերով, թէ ամայի։ Եթէ շէն էր՝ Հայկ ինչպէս կրցաւ երեքհարիւր հոգւով անցնիլ այն քաղաքներէն և գիւղերէն որ Բելայ հպատակ էին (Խոր. Ա. ժ), և այն երկիրներուն կուսակալներէն ինչպէս չարգելուեցաւ։ Իսկ եթէ ամայի էր այն երկիրը՝ յայնպիսում երկար ճանապարհորդութեան պաշար ուստի գտաւ Հայկ. մանաւանդ Բէլ ուստի գտաւ ամիսներով պաշար այնչափ բազմութեան զօրաց։ Պարագայք՝ որ արդարև բաւական են բառնալ այն պատմութենէն ամէն հաւանականութիւն։

Դիտեցուք սակայն, թէ ընդ Բելայ յարաբերութիւն ունեցաւ Հայկ,

ուստի և Ասորեստանցիք զպատմութիւն նորա գիտցան և այնպէս մանր գրեցին ի տարեգիրս իւրեանց. բայց մինչ զթագաւորն և զզօրն իւրեանց պարսաւելով և զՀայկ գովելով կը գրէին. հպարտ և և բռնաւոր կոչելով զԲէլ, և զզօրս նորա անկարգ, անճոռնի, յանդուգն, իսկ զՀայկ՝ ուշիմ, խոհեմ, խայտակն։

**21**. Իսկ յետ Հայկայ Հայաստանի մէջ գաղթականութեանց և ներքին շինութեանց պարապող և յԱսորեստանէ բոլորովին հեռու և զատ ապրող յաջորդ նահապետաց պատմութիւնն ինչպէս գիտցան Ասորեստանցիք. ապա թէ ոչ՝ հարկ է ասել, թէ Ասորեստանցիք յետ Հայկայ ունեցան ի Հայս դարերով յատուկ լրտեսներ կամ գործակալներ, որոց գործ էր ամենայն ինչ ի գրի հարեալ առաքել ի Նինուէ՝ տարեգիրներուն մէջ արձանագրուելու։

Հայկայ յաջորդներուն պատմութիւնը, ուր կը յիշուին գաղթականութիւնք և շինութիւնք որ եղան դէպ ի հիւսիս, ամայի ենթադրեալ երկիրը շէն մարդաշատ գործելու՝ բոլորովին տեղական և մասնաւոր է, և թեթև վերաբերութիւն անգամ չունէր Ասորեստանեայց, որ Նինուէի ենթադրեալ դիւանին մէջ գոնէ համառօտիւ յիշուէր, ուստի և առանց այն քննադատական պատճառներուն իսկ զորս վերը մէջ բերինք՝ տղայական դիւրահաւանութիւն է նինուէական դիւանին մէջ գրուած հաւատալ այն պատմութիւնը։ Այնպիսի հին տարեգիր մը, եթէ երբէք կար ի Նինուէ՝ կրնար պարունակել Ասորեստանի թագաւորաց և թերևս դրացի իշխանաց ոմանց յաջորդութեան և շատ երևելի գործոց, զորօրինակ նշանաւոր իրիք յաղթութեան ժամանակագրական համառօտ յիշատակութիւնը, բայց ոչ անձանց և տեղեաց երկայն նկարագիրներ, որպիսի է Հայկայ յաջորդաց գաղթականութեան պատմութիւնը, որ որպէս դիւրին է տեսանել՝ ոչ այլ ինչ է արդեամբ՝ եթէ ոչ մեծաւ մասամբ Հայաստանի երևելի բնական դրից տեղագրութիւնը, զոր առանց քաղդէական հին պատմութեան մը կրնար յօրինել Խորենացին կամ ուրիշ նմին նման ճարտար գրիչ մը։

Ի պատմութեան յաջորդաց Հայկայ եթէ կայ ինչ կարևոր՝ պատմութեան մատենագրական կողմն է. և այս առանց տարակուսի կը վերաբերի հնարագէտ հանճարոյ Խորենացւոյն, որ գիտցաւ յղանալ և երևցնել, տեսակ մը ինքեան միայն սեպհական ոճոյ փափկութեամբ՝ իմաստնագոյն և կանոնաւորագոյն աշխարհաշինութեան պատկեր մը՝ զոր մտածել հնար էր այնպիսի հին ժամանակի մը համար։ Բայց զոր մեք խնդրեմք աստ՝ պատմութեան նիւթն է, ոչ թէ ոճը, որ բոլորովին դուրս է մեր առաջիկայ նպատակէն։

**22**. Անձանց և մանաւանդ տեղեաց յատուկ անուանք, եթէ

արդարև պատմական են՝ ընդհանրապէս կը ծառայեն իբրև ապացոյց ի հաստատութիւն պատմութեան։ Սակայն ի պատմութեան Մարիբասայ յատուկ անուանք մանաւանդ առիթ տուած են տարակուսութեանց պատմութեան վաւերականութեան դէմ։ Բաւական մեծ տարակուսութիւն է արդարև, թէ ինչպէս հայ նահապետաց անուանք, որ մինչև Արայ (բաց ի Հայկայն, զոր ազգային աւանդութիւնն, անկախ ի Խորենացւոյն պատմութենէ, գէթ իբրև հսկայ կը ճանչնար), հայ լեզուին բոլորովին օտար և անծանօթ բառեր են՝ յետ Արայի սկսանին լինել կարգաւ հայեցի անուններ, արմատով և կազմութեամբ ծանօթ և ընտանի։ ԶՄարիբասեան պատմութիւնն իբրև ի յառաջագունէ ճշմարիտ ենթադրող մը անտարակոյս պիտի ջանայ հարթել զայս դժուարութիւն ասելով, թէ Հայկ և ընտանիք նորա երկար ժամանակ բնակելով ի Բաբելոն՝ արամերէն կը խօսէին, վասնորոյ մինչև Անուշաւան՝ յատուկ անուանք են օտար, թերևս սեմական լեզուաւ. բայց յետ այնորիկ ազգին լեզուն առ սակաւ սակաւ փոխուեցաւ, և յատուկ անուանք ևս սկսան հայանալ, այնպէս որ Արմենակ, Կադմոս, Արմայիս, Ամասիա, Արամ անուանց յաջորդեցին Անուշաւան, Պերճ, Բազուկ, Սկայորդի, Հրաչեայ և սոցին նման հայերէն անուանք։ Այս պատճառը թերևս զօրէր՝ եթէ յիշեալ անծանօթ անուանց հետ միանգամայն ծանօթ հայեցի անուանք չյիշուէին միևնոյն ժամանակ, ինչպէս Գերեզմանք, Զոր, Մշակ, այլովքն հանդերձ։

Դիտողութեան արժանի է, զի Արմենակ անունն իբրև Արմէն բառին աճանցը՝ կ'ենթադրէ այս բառը, այսինքն կը ցուցնէ, թէ Արմէն բառը կար ազգին մէջ՝ երբ Արմենակ անունը դրուեցաւ. սակայն ըստ պատմութեան Խորենացւոյն՝ Արմէն անունը համեմատութեամբ նոր է քան զԱրմենակ, քանզի եղած է յանուանէ Արամայ. ուստի կամ պարտինք ընդունել, թէ Արմենակ յետոյ՝ էր քան զԱրամ, և կամ՝ թէ Հայք Արմէն կոչուած են յԱրմենակայ, ինչպէս ոմանք կը համարին (էջ 5—6.), և ոչ յԱրամայ, որպէս պատմէ Խորենացին։

Չէ պարտ առանց յիշելու անցնիլ նաև սա կէտը, թէ Մարիբասեան մատենին քաղդէական բնագիրն, ապա յոյն թարգմանիչը և ապա ասորին Մարիբաս ինչպէս կարող եղան ճշդիւ գրել Անուշաւան, Նորայր, Զարմայր, Պերճ, Բազուկ, Սկայորդի, Պարոյր, Հրաչեայ, Պաճոյճ և սոցին նման հայերէն անուններ, այնպէս որ Խորենացին կրցաւ զնոսա դիւրաւ հայերէն դարձունել։

Խորենացին ընդհանրապէս տեղեաց անունները կը հանէ յան-

ունանէ երևելի տրանց, ինչպէս զԱրագած՝ Արմենակայ, զՄասիս՝ Ամասիայ, զԵրասխ՝ Երաստայ, զԱրարատ՝ Արայի անուններէն, անտարակոյս հաստատութիւն տալու համար պատմութեան, և ուրեք ուրեք թուի հասանել իւր նպատակին։ Արդարև ի՞նչ աւելի ապացոյց կրնայ պահանջուիլ պատմութեան Ցոլակայ և Փառոխի՝ քան զՑոլակերտն և զՓառախոտ, յատուկ անուանք տեղեաց որ ի հինգերորդ դարուն դեռ կը յիշուին (Եղիշ. տպ. Վենետ, 1828. էջ 136)։ Բայց և այնպէս և ոչ մին ի ստուգաբանութեանց Խորենացւոյն ունի բանասիրական կամ պատմական հիմ. և ստուգաբանութիւն մը ընդունելու համար պարտի համաձայն գտնուիլ այս երկուց, բանասիրութեան և պատմութեան։ Բանասիրութեան և պատմութեան յայտնապէս անհամաձայն են ստուգաբանութիւնք, զորս տայ Խորենացին Հարք և Երասխ անուանց։ Ցետ պատմելոյ, իբրև ի Մարիբասայ, թէ Հայկ բնակեցաւ «ի բարձրաւանդակ դաշտի միում» կը յաւելու. «Եւ անուանէ զանուն լեռնադաշտակին Հարք, այսինքն, աստէն բնակեալքս՝ ազգի տանն Թորգոմայ»։ Հարք բառին տրուած այս մեկնութիւնը մութ է, կը ցուցնէ սակայն, թէ Խորենացին հայր բառին յոգնակին կը համարի զՀարք, որպէս թէ Հայկ այս անունը տուաւ իւր առաջին բնակութեան տեղւոյն՝ ցուցնելու համար առյապայ եկելոց, թէ Թորգոմական ազգին (Հայոց) հարք բնակեցան անդ։ Բանասիրութիւնը կը ցուցնէ սակայն, թէ Հարք հայր բառին յոգնակին չէ, այլ ուրիշ մեզի անծանօթ եզակի բառ մը, ինչպէս յայտնի է բառին հոլովման ձևէն, որ է Հարքայ և ոչ հարանց. ուստի աւելի տրամաբանական է ենթադրել, թէ Հարք անուան պատահական նմանութիւնը հայր բառին յոգնակւոյն հետ թելադրած է այն պատմութիւնը, քան ընդունել զՀարք իբրև յոգնակի հայր բառին։ Իսկ զԵրասխ հանել յանուանէ Երաստայ՝ պատմական չէ, քանզի գիտենք թէ Երասխ (Արաքսա), ինչպէս նաև Կուր՝ արիական լեզուի բառեր են և գետոյ հասարակաց անուանք արիական երկիրներէն երևելիներուն։ Պարսկաստան, Մարաստան և Բակտրիա ունէին Երասխ և Կուր, ինչպէս Հայաստան (Մասբեր. Հնախօս. արևել. ազգ. էջ 503)։ Ի՞նչ աւելի բանասիրական պատճառ կայ զԱրագած յորջորջումը տալ Արմենակայ անուան, ընդ որում ամենևին նմանութիւն չունի, քան արեգ բառին և կամ ուրիշ արմատոյ մը որ անծանօթ է մեզ. կամ ի՞նչ աւելի պատմական պատճառ կայ հաւատալու, թէ Մասիս (որ հայցականն է Մասիք բառին, սխալմամբ ուղղականացեալ) եկած է յանուանէն Ամասիայ, քան Մասիոս բառէն, որ յունարէն անունն է Տաւրոսի հարաւային արևելեան շղթային և այլով ան-

ուամբ կը կոչուի Կորդուաց գաւառ, կամ ըստ Սեմականաց՝ լերինք Արարատայ, և որոյ միջին և երկրորդական ճիւղն է Հայ Մասեաց գաւառին։ Ոչինչ ընդհատ անհիմն է զԱյրարատ հանել յանուանէ Արայի։ Գալով Ցոլակերտ և Փառախոտ անուանց՝ գիտելի է զի այս անուանք, առաջինն իբրև ձմերոց արքունի, և երկրորդն իբրև երևելի աւան՝ կը յիշուին ի Ե. դարուն առ Եղիշէի տարբեր ուղղագրութեամբ, իբր Զողակերտ և Փարախոտ, *ծող* և *փարախ* բառերէն, և աւելի բանաւոր իմաստ կու տան։ Այս երկու տեղեաց իբրև կարևոր 'յիշատակուիլն ի Ե. դարուն՝ պատճառ կու տայ մեզ համարել զնոսա յետնագոյն ժամանակի տեղեր, քանզի Ամասիայի ժամանակէն մինչև հինգերորդ դար աւան կամ գիւղ մնացած կարծել հաւանական չէ, մանաւանդ զի Զողակերտ բառին *կերտ* մասնիկը որ հայ անուանց, մանաւանդ տեղեաց յատուկ անուանց մէջ սովոր մուտ ունի՝ նոր պարսկերէնի *քերտէն*, հլ. գործել, ըստ յետնոց՝ կերտել բառէն է, և չկարէր լինել ծանօթ Հայոց Ամասիայի ժամանակ, մինչ Պարսից հետ յարաբերութիւն դեռ չկար։

Խորենացին որպէս թէ ի Մարիբասայ առնլով կը յիշէ երեք անձինս, Խոռ, Մանաւազ և Բազ։ Չերկուց առաջնոց ասէ, թէ էին եղբարք Արմենակայ, իսկ զերրորդէն, զԲազայ ասէ լինել որդի Մանաւազայ, և ի սոցանէ համարի սերեալ զնահապետութիւնս Մանաւազեանց, Բզնունեաց և զԽոռխոռունեաց։ Թէ Մանաւազ և Բազ արդարև անձինք էին, և թէ Մանաւազեանն և Բզնունին ստուգիւ կը սերէին ի Մանաւազայ և ի Բազայ՝ զայսցանէ որոշ ինչ ասել չունիմք։ Խոռխոռունի անունը միայն քննենք աստ։ Տեղւոյ կամ ազգի մը անունէն, առանց պատմական ապացուցի, անձ ստեղծել իբրև նահապետ այն ազգին՝ դիւրին է. զորօրինակ, Տայոս մը կամ Գոդ մը ստեղծել՝ իբրև նահապետ Տայոց կամ Գուգարաց, որպէս էր սովորութիւն հին ազգաբանից՝ գրեթէ ամէն ցեղի կամ ազգի համար ստեղծել նահապետ զոմն, և յանուն նորա կոչուած համարել զազգն կամ զցեղ։ Այսպէս Եբրայեցիք Եբերէ են, Ասորեստանցիք՝ Ասուրէ, Յոյնք՝ Յաւանէ։ Արդ՝ մեր ծերունի պատմիչը, ինչպէս տեսանք՝ Խոռխոռունի անունը կը հանէ ի Խոռայ, զԽոռ Հայկայ կրտսեր որդիներէն մին դնելով։ Թէ Խոռ պատմական անձ էր թէ ոչ՝ թողունք այս խնդիրը. տեսնենք միայն, թէ Խոռխոռունի անունը կրնա՞ր այլուստեք, գէթ հաւանականապէս, առնուլ ծագում։ Խոռխոռ հին արևելեան լեզուի մը բառ է, և կը պատասխանէ հայերէն *կարկառ*, լատիներէն carcer և գերմաներէն Kerker բառերուն, որ կը նշանակեն քարակոյտ կամ բանտ, որպիսի էր Վանայ բերդը։ Արդ՝ Խոռխոռ հին անուն էր Վանայ քարաբլրոյն և

բերդին, որ ինչպէս կ'երեւի՝ ժամանակաւ բանտարկեալներ պահելու յատկացեալ էր (տես էջ 22)։ Բանասիրական տեսութեամբ միթէ նուա՞զ բանաւոր է կարծել, թէ Խոռխոռունին էր անուն այն ցեղին, որում հին, թերեւս նախապատմական հարստութեան մը ժամանակ յանձնուած էր Խոռխոռւին պահպանութիւնը։ Արդարեւ Խոռխոռունիք ի Հայս հին նախարարութիւն էին, որոց ծագումն անյայտ է, ուստի և չենք գիտեր թէ սերնդեամբ բուն հայ էին թէ ոչ. սակայն ինչպէս որ յետ գտանելոյ Վանայ բերդին հին Խոռխոռ անունը՝ չենք կրնար, Խորենացւոյն ստուգաբանութեան միայն հաւատալով, Խոռխոռունի անունը Խոռէ մը հանել՝ նոյնպէս չենք կրնար այն նախարարութիւնն ի բնէ հայ համարել, տեսնելով այն ցեղին ուրիշ մէկ անունն, այն է *Մաղխազ* կամ *Մաղխազունի*, որ սեմական կամ թերեւս հին քուշեան լեզուին *մալաքա* կամ *մէլիքի*, թագաւորական, բառն է։ Մասնաւոր պատմական յիշատակութիւն մը չունենալով՝ չենք կարող գիտել, թէ ինչ պատճառաւ այս Մաղխազունի, թագաւորական, անունը տրուած էր այն ցեղին. բայց բառին սեմական կամ քուշեան ծագումը ո՛չ ապաքէն կրնայ կարծել տալ, թէ Խոռխոռունիք որ և Մաղխազունիք՝ Վանայ բերդը շինող, այն հին արմենական բեւեռագիրները գրօշմող, ծագմամբ հին քուշեան (տես էջ 22, 23) թագաւորական ցեղէն էին, և կամ այն հին տէրութեան արքունի պաշտօնեաներ, թերեւս թիկնապահներ, քանզի նաեւ առ Արշակունեօք այս պաշտօնը վարեցին Խոռխոռունիք։

Ուղիղ չէ նաեւ Մշակ բառին աղաւաղեալն համարել զՄաժաք (Մազաքա), որ էր հին քաղաք Կապադովկիոյ, և կը թուի կոչուած այսպէս յանուն հին քուշեան ազգին Մոսոքաց կամ Մազքթաց, որ էին նախնի բնակիչք Կապադովկիոյ և Պոնտոսի, և ապա սեմական և արիական ազգերէ մղուելով քաշուեցան դէպ ի հիւսիս։ Ի սոցա անուն կոչուած կ'երեւի նաեւ *Մոսքեան* լերանց գօտին։ Ըստ Խորենացւոյն՝ որպէս թէ Արամայ կուսակալը Մշակ շինելով զՄաժաք՝ կոչեց յիւր անուն Մշակ, բայց տեղացիք չկրնալով արտաբերել՝ կոչեցին Մաժաք։ Եթէ տեղացիք չկրցան արտաբերել մշակ բառն, ինչպէս կրցան հայերէն խօսել սորվիլ ըստ հրամանին Արամայ, որպէս պատմէ Խորենացին. և Հայք ընդէր ոչ պահեցին Մշակ անունը. միթէ և Հայք չկրցան արտաբերել, քանզի ի հին մատենագիրս մեր զԿեսարիա կը գտնենք հայերէն անուամբ Մաժակ կոչուած, և ոչ ուրեք Մշակ.—«Այս իշխանք են . . . զորս զաւառեաց թագաւորն. և առաքեաց զնոսա ի կողմանս Կապադովկեցւոց ի քաղաքն Կեսարացւոց, զոր ըստ հայերէն լեզուին (կը յաւելու թարգմանիչն) Մաժաք կոչեն» (Ագաթ. ձծԲ.)։

Հօս դիտողութիւն մը աւելցնելով վերջացնենք այս յօդուածը։ Եթէ Հայ ցեղն հնդեւրոպական է՝ հարկաւ այնպէս հին է, զի զըսկիզբն նորա պատմաբանօրէն ցուցնել անհնար է. քանզի մեր պատմական աւանդութեանց սկիզբը չի հասնիր մինչեւ հոն։ Հայ ցեղը չի կրնար եկած համարուիլ յԱրմենիա, կամ ճշդագոյն եւս, ի բուն Արարատեան գաւառ իւր՝ բայց եթէ արիական ազգաց գաղթականութեան հոսանաց ուրիշ առուներուն հետ, սակաւ ինչ կանուխ կամ անագան, բայց անշուշտ միշտ ի նախապատմական ժամանակի։ Հայ ցեղին հնդեւրոպական կամ արիական սկիզբը որչափ յայտնի է՝ նոյնչափ յայտնի է, թէ այս ցեղն ստացած է իւր Արարատեան գաւառը՝ զայն յառաջ քան զնա գրաւող զանազան ցեղերէ։ Այսմ ապացոյց կրնան համարուիլ այն գաւառին եւ շրջակայից հին աշխարհագրական անուանք—Արարատ, Արմաւիր, Արագած, Արաքս եւ այլք։ Առանց երկբայութեան մարթ է ասել, թէ այս եւ սոցին նման հին անուանք են պատմական դիպաց առթիւ թելադրեալ արիական լեզուի բառեր. բայց թէ այն բառերը թելադրող դէպք, եւ թէ կազմիչ արմատք եւ ածանցք նոցա այնպէս անծանօթ են մեզ՝ զի զճշմարիտ իմաստ նոցա գտանել՝ պատմութեան եւ լեզուաբանութեան այժմու վիճակի մէջ կարելի չէ։ Այն բառերը թելադրող դէպք նախապատմական են, ուստի եւ բոլորովին արտաքոյ մեր գիտութեան սահմանէն, իսկ կազմիչ արմատք նոցա շատ հաւանական է թէ կը վերաբերէին զանազան լեզուին կամ ուրիշ հին արիական լեզուի մը, որ կորսուած կամ անծանօթ է մեզ։

**23.** Ի հին աշխարհագիրներէ գիտենք, եւ է արդարեւ հաւանականագոյն, թէ ի հիւսիսային եւ յարեւելեան կողման Հայոց, անդր քան զԵրասխ եւ զԿուր, մինչեւ Կովկաս եւ մինչեւ ի ծովն Կասպից, յանծանօթ ժամանակաց հետէ կը բնակէին այլեւայլ սկիւթացի, կամ արդի գիտնական բառով, դուրանեան կամ արիո—դուրանեան ցեղեր։ Խորենացին է միայն որ առ Հայկաւ եւ յաջորդօք նորա ամայի եւ անբնակ ենթադրելով այն կողմերը՝ Հայկայ յաջորդներուն գրաւել, բաժնել եւ նոր նոր գաղթականութեամբք լեցունել կու տայ բոլոր այն երկիրները մինչեւ Կովկաս։ Զորօրինակ, զարեւելեան մասէն Հայոց եւ զՍիւնեաց խօսելով՝ ասէ թէ այն երկիրը բազմամարդ եւ շէն գործողն եղաւ Գեղամայ որդին Սիսակ, որուն հայր նորա Գեղամ ետ ժառանգութիւն Գեղամայ ծովուն արեւելեան կողմը, սահման կարելով «մինչեւ ցդաշտ մի, որ (առ) գետն Երասխ հատեալ զքարանձաւս լերանց՝ անցանէ ընդ խոխամաձիգս ներս, եւ ահագին դղրդմամբ իջանէ ի դաշտն»։ Այսպէս ըստ Խորենացւոյն՝ Գեղամ կը պարգեւէ ի ծովէն Սեւանայ մինչեւ

ի ջրվէժս Երասխայ այն ընդարձակ երկիրը Սիսակայ։ Բայց ընդէր արդեօք Գեղամ մինչև ջրվէժները սահման կը կտրէ Սիսակայ, և չտայ նմա թոյլ երթալ աւելի յառաջ։ Այսր պատասխանն յայտնի է։ Խորենացին, կամ այլ ո ոք և է շինիչ Մարքասեան պատմութեան, գիտնալով թէ Սիւնեաց սահմանը կը հասնէր մինչև այն ջրվէժները՝ Գեղամայ մինչև հոն սահման դնել կու տայ ժառանգութեան որդւոյն։ Բայց Խորենացւոյն այս պատմութիւնն անհիմն է։ Խորենացին յետ պատմելոյ, թէ Սիսակ ելից «շինութեամբ զսահմանս բնակութեան իւրոյ և զաշխարհն կոչեաց իւրով անուամբն Սիւնիք»՝ կը յաւելու. «Այլ Պարսք յստակագոյնս Սիսական կոչեն։» Նախ՝ Սիւնիք բառն ամենևին նմանութիւն չունի Սիսակ անուան, այլ է բնիկ ցեղի մը անուն։ Գալով Սիսական բառին՝ Պարսիկք, յորոց առնուն և Արաբացիք՝ Սիսական անուամբ կ'իմանային Սակ կամ Շակ կոչուած հին մար—սկիւթացի (médoscythe) ցեղի մը երկիրը յարևմտից Կասպից ծովուն։ Ուստի շատ հաւանական է, թէ Սիւնեաց երկիրն, ինչպէս նաև մերձակայ նահանգն Արցախու, որ և կոչի ի հին մատենագիրս մեր «Փոքր Սիւնիք» (Խոր. Գ. Գ.), Սիսական և Հաբանդ համանուն գաւառներով վաղուց բնակութիւն էին Շակաց, ժողովուրդ վայրենաբարոյ, օտար ի Հայոց, մինչև Կորեան, յետ քրիստոնէութեան անգամ՝ կոչել այն կողմերուն բնակիչները «գազանամիտս, վայրենագոյնս, ճիւաղաբարոյս»։ Այս է, որպէս ասացաք՝ հաւանականապէս Սիւնեաց երկրին, ինչպէս նաև Արցախու գաւառին Սիսական կոչուելուն պատճառը, մանաւանդ զի ունիմք Շակաշէն անուն գաւառ, որ է մին ի գաւառաց նահանգին Ուտի։ Սակ կամ Շակ անունը կը գտնենք նաև առ Եղիշէի (էջ 80, տպագր. Վենետ. 1828) ի բառին Սագաստան, Սասանեանց Սիպերիան, իբրև տեղի աքսորանաց մեղուցելոց քաղաքական յանցանօք։ Նաև Իսիդորոս Քարակացի, հին աշխարհագիր յոյն առ Պտղոմեաւ Ղագոսիւ՝ կը յիշէ զՍակաստան իբրև գաւառ Սակաց սկիւթացւոց (Աւ. Ինճիճ. Ստոր հին Հայ. էջ 341)։ Ըստ Ստրաբոնի (գպր. ԺԱ. 4, 5), ի Բակտրիոյ մինչև ի սահմանս Հայոց այն աճագին երկիրը կը վերաբերէր Շակաց, որոց յիշատակը մնացած է, ասէ, ի միում ի գաւառաց Հայոց որ կոչի Շակաշէն։ Ըստ աւանդութեան իւիք, ասէ Ստրաբոն, Կիւրոս գնաց ի պատերազմ ընդդէմ Սակաց, և յաղթելով նոցա հաստատեց Սակեան կոչուած տօնն ի պատիւ Անահտայ։

Խորենացին ըստ հին սովորութեան զոր յիշեցինք վերագոյն, տեսնելով Սիսական անունը՝ կ'ստեղծէ Սիսակ մը իբրև նահապետ, յորմէ սերել կու տայ ոչ միայն զՍիւնիս այլև զԱղուանս. և

որպէս զի Աղուան անունն հանէ ի Սիսակայ՝ «աղու» մականունը կ'ընծայէ նմա, որպէս թէ Սիսակ վասն քաղցրաբարոյութեանն աղու կը կոչուէր, և աստի եղաւ Աղուան անունը.—«Զցեղս զայս մեծ և անուանի մոռացումն եղև մեզ յառաջնում մատենին յիշատակել, զզաւնգս սիսական, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից և զլեռնակողմն նորին դաշտի, ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն որ ասի Հնարակերտ, և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցաւ Աղուանք, զի աղու ձայնէին զնա» (Խոր, Բ, Ը.)։ Գիտենք սակայն, թէ Աղուանից հին և բուն անունն էր գարգարացի ( Խոր. Բ, ԺԵ. Գ, ԶԴ. բաղդատէ ընդ. Բ. Ը.)։ Աղուան անունը որ թարգմանութիւն է լատիներէն Ալպանիա բառին և կը նշանակէ սպիտակ՝ տրուեցաւ այն երկրին առ հռոմայեցւոց, ինչպէս Իբերիա, Վիրք, անունը՝ Գուգարաց, որ նախկին և բուն անունն է Վրաց։ Թէ ընդէր Ալպանիացի և Իբերիացի կոչուեցան Աղուանք և Վիրք, որոց համանուն ազգեր կան յԵպիւրոս և ի Սպանիա՝ այլևայլ կարծիք կան, զորոց խօսել չէ պատշաճ տեղւոյս։ Զիարդ և իցէ այս՝ Սիւնիք, Արցախ, Փայտակարան և Ուտի, որպէս և Մուրացան ցեղին երկիրն յորեւելից Մասեաց (տես էջ 54)՝ ի սկզբան կը վերաբերէին Մարաց, և առ Աքեմենիդեամբ (յաջորդօք Կիւրոսի) եղեն նահանգք Պարսից, և Ատրպատական կոչուած ընդարձակ երկրին երևելի մասը կը կազմէին (Բուզ. Գ. Զ.) Առ Արշակունեօք, հաւանականապէս առ մեծաւն Տիգրանաւ, մասնաւոր դաշամբ, որ զԿուր գետ կը դնէր սահման ի մէջ Հայոց և հիւսիսային դրացեաց նոցա Վրաց և Աղուանից (Բուզ. Ե. ԺԳ. ԺԵ.)՝ վերոյիշեալ նահանգներն եղան մասն Մեծին Հայոց, թէպէտ բնակիչները բոլորովին տարբեր էին ի Հայոց ծագմամբ և լեզուաւ, զոր նոյն ինքն Խորենացին կը նկարագրէ իբրև «կոկորդախօս, աղխազուր, խժական, խեցբեկագոյն» ( Խոր. Գ. ԾԴ.)։ Այս նահանգներն, ինչպէս նաև Գուգարք՝ մնացին ընդ իշխանութեամբ Հայոց, թէպէտ ապստամբութիւններ պակաս չէին (Բուզ. Գ, Ե. Խոր. Գ, Դ.), մանաւանդ մօտ ի կատարած հարստութեան Արշակունեաց։ Մուշեղ Մամիկոնեան, սպարապետ Պապայ, սաստիկ պատերազմաւ նուաճեց այս և ուրիշ նահանգներ որ ապստամբած էին առ Արշակաւ.—«Թողին զիւրեանց արքայն Արշակ . . . նախ բդեաշխն Աղձնեաց . . . յետ սորա Գուգարաց բդեաշխն . . . ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ . . . յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հայոց տունն Հայոց թագաւորին որ էր զԱտրպայական աշխարհաւն. յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց. յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից (Փայ-

տակարան)» (Բուզ. Գ. Ծ.)։ «Եւ զկողմանս Մարաց, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց՝ հարկանէր (Մուշեղ) մեծապէս, հարկանէր և զերկիրն Արձախայ մեծաւ պատերազմաւ» (Բուզ. Ե, ԺԱ. ԺԲ.)։ Նոյն Բուզանդ «Աղուանից երկիր» կը կոչէ զՈւտի, այսինքն մասն բուն Աղուանից որ էին անդր քան զԿուր, որպէս և զԳուգարս կ'անուանէ «աշխարհ Վրաց,» այսինքն մասն բուն Վրաց բնակելոց յայնկոյս Կուր գետոյ.—«Առնէր (Մուշեղ) պատերազմ ընդ երկիրն Աղուանից, . . . հարկանէր . . . զՈւտի և զՇակաշէն . . . և որ շուրջն էին զնովաւ գաւառք. և զԿուր գետ որպէս և յառաջն լեալ էր՝ ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն Հայոց սահման արարեալ կացուցանէին» (Բուզ. Ե. ԺԳ.)։ «Ապա խաղայր սպարապետն Մուշեղ ի վերայ Վրաց. . . և զբդեաշխն Գուգարաց որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց և ապստամբեաց՝ կալեալ գլխատէր. . . և զհին սահմանն որ յառաջուն էր լեալ ընդ երկիրն Հայոց և ընդ երկիրն Վրաց, որ է ինքն մեծ գետն Կուր՝ այնուհետև յինքն վարեալ դառնայր անտի» (Բուզ. Ե. ԺԵ.)։

**24.** Եկեսցուք այժմ ի պատմութիւնն Արամայ, որ քան զպատմութիւնն Հայկայ ընդարձակ է, ուստի և աւելի անտեղի է Ասորեստանի գիւանի մը կամ տարեգրի մէջ գրուած հաւատալ զայն։ Բաւական համարելով սակայն ինչ որ ասացաւ զայսմանէ՝ քննենք միայն համառօտիւ Արամայ պատմութեան ուրիշ կէտերը։ Բայց հարկ կը համարինք հոս ի մէջ բերել նախ Խորենացւոյն զարմանալի խոստովանութիւնը զՄարիբասեան աղբերէն։ Զարմանալի է արդարև, որ մեր ծերունի պատմիչն յետ ասելոյ յԹ. գլուխ առաջին գրոց պատմութեան իւրոյ, թէ Մար Իբաս հանեց մեր ազգին *ճշմարիտ* պատմութիւնը Նինուէի դիւանին մէջ Աղեքսանդրի հրամանաւ յունարէն թարգմանուած քաղդէական մատենէն, որ ունէր «զբուն հնոց և զնախնեացն բանս»՝ ի ԺԹ. գլուխ նոյն գրոց, յետ յանդ հանելոյ զպատմութիւնն Արամայ՝ յանկարծ, որպէս թէ ինքն ևս տարակուսելով՝ առարկութիւն մը կը ջանայ լուծել սա կերպով. Թող, ասէ, չտարակուսի ոք, թէ ընդէր այսոքիկ (ի Հայկայ մինչև ցԱրամ պատմեալքն) Ասորեստանի թագաւորաց կամ մեհենից գրոց մէջ յիշուած չեն։ Նախ՝ վասն զի յառաջ են քան զժամանակն Նինոսի, մինչ ոչ ոք այսպիսեաց (այսինքն պատմութիւն գրելու) փոյթ ունէր. երկրորդ՝ հարկ ևս չէր նոցա (Ասորեստանեայց) ուրիշ ազգաց օտար և հեռաւոր երկիրներու հին լուրերն և աւանդութիւնները գրել ի մատեանս թագաւորաց և մեհենից իւրեանց, մանաւանդ զի պարծանք և պատիւ չէր նոցա օտար ազգաց արութիւն քաջութեան։ Յիշէ և այլ ինչ պատճառ նոյն մատենագիր

(Մար Իբաս), թէ որովհետեւ հպարտ և անձնասէր էր Նինոս և կամէր աշխարհակալութեան և ամենայն քաջութեան և լաւութեան հեղինակ զինքն ցուցանել՝ շատ մատեաններ, որ զարութիւնս յառաջագունից քան զնա յիշատակէին՝ եա այրել բազում ուրեք, իւրոյ ժամանակին մարդոց գործերն ևս գրել դադրեցնելով իւր գործերը միայն գրել կու տար։ Բայց (ինչ որ մենք պատմեցինք զՀայոց) թէպէտ գրուած չէին ի պատմութիւնս բուն Թագաւորաց և մեհենից՝ սակայն, որպէս Մար Իբաս ասէ, փոքր և աննշան արանց ոմանց ձեռօք երգերէ ժողովուած և պահուած էին յարքունի դիւանին Նինուէի։ Ահա Խորենացւոյն բուն խօսքը. «Բայց թէ ընդէր այսոքիկ ի բուն մատեանս Թագաւորացն կամ մեհենիցն (Ասորեստանեայց) ոչ յիշատակեցան՝ մի ոք ընդ այս երկբայացեալ տարակուսեսցի։ Մի՝ զի յառաջ քան զՆինոսի ժամանակս Թագաւորութեանն է, յորում ոչ ոք այսպիսի իրաց փոյթ յանձին ունէր. երկրորդ՝ զի ոչ հարկ ինչ և ոչ պէտք կարեւորք էին նոցա՝ զազգաց օտարաց և զաշխարհաց ի բացեայ և զհամբաւս հինս և ըզզրոյցս նախնականս յիւրեանց Թագաւորաց կամ մեհենից մատեանս գրել, մանաւանդ զի և ոչ պարծանք ինչ նոցա և ոչ բարգաւաճանք (էին) օտար ազգաց քաջութիւն և գործք արութեան։ Բայց թէպէտեւ ոչ ի բուն մատեանսն՝ սակայն, որպէս Մար Իբաս Կատինայ պատմէ, ի փոքունց ոմանց և յաննշանից արանց, ի գուսանականէն այս գտանի ժողովեալ ի դիւանի արքունեաց։ Ասէ և այլ իմն պատճառս նոյն այր (Մար Իբաս), թէ որպէս ասայ, հըպարտ և անձնասէր գոլ Նինոս, կամելով զինքն միայն աշխարհակալութեան և ամենայն քաջութեան և լաւութեան ցուցանել սկիզբըն՝ հրամայէ զբազում մատեանս և զզրոյցս առաջնոցն, ըստ տեղեաց տեղեաց և ոյր ուրուք գործոց քաջութեան՝ այրել. իսկ որ առ իւրովք ժամանակօք՝ դադարեցուցանել, և որ ինչ վասն իւր միայնոյ՝ գրել»։ Ի բանից աստի Խորենացւոյն կը հետեւի ուրեմն, թէ Հայկազանց կոչուած պատմութիւնն, ի Հայկայ մինչեւ ցԱրամ, ոչ թէ ի ժամանակակից մարդոց գրուած ստոյգ պատմութիւն է՝ այլ յետ Նինոսի աննշան մարդոց ձեռօք անուն և ժամանակն անյայտ երգերէ հաւաքուած զրոյցք։ Զարմանալի է նախ, թէ ինչպէս գուսանական երգերէ այսպիսի երկայն և մանր պատմութիւն մը կրցաւ հաւաքուիլ, և փոքր և աննշան մարդոց ձեռամբ երգերէ հանուած հաւաքածոյ մը մուծաւ ի դիւան արքունի։ Երկրորդ՝ եթէ Ասորեստանցիք չունէին պէտս, և ոչ պարծանք և բարգաւաճանք էին նոցա օտար և հեռաւոր ազգաց զրոյցներն ի մատեանս Թագաւորաց իւրեանց գրել՝ ինչպէս նոյն զրոյցներն ի ձեռաց փոքր

և աննշան մարդոց տանելով դրին յարքունի դիւանին իւրեանց. ոչ պզտիկ հակառակութիւն է այս։ Մեք ևս չենք հաւակնիր, թէ թագաւորաց մատեաններուն և արքունի դիւանին մէջ ինչ տարբերութիւն կայ։ Դիտողութեան արժանի միւս ևս կէտ մը այս է, զի Խորենացին, ինչպէս կ'երևի՝ կը կարծէ, թէ Նինոսի ժամանակ և յառաջ իսկ քան զնա, կար մատենագրութիւն, և ամենայն ուրեք կը գտնուէին մատեանք, դիւանք և տարեգիրք, որպէս էր առ իւրով ժամանակաւ, ուստի և ամէն տեղ մատեաններ ալ թէ և նորեր գրել կու տայ Նինոսի, ուր, որպէս արդէն տեսցաւ՝ շատ պատճառներէ յայտնի է, թէ զայնու ժամանակօք Ասորեստանեայց, Քաղդէացւոց և նոցին սահմանակից ազգաց մէջ ոչ մատենագրութիւն կար և ոչ մատեան. բևեռագիրք միայն կային, և աշխարհակալ թագաւորք ևեթ գործածած են այն գիրը գլխաւորապէս Նինուէի և Բաբելոնի կողմերը։

**25.** Դիտողութեան արժանի ուրիշ կէտ մը կայ հոս։ Մարիբասեան պատմութիւնն առ Արամաւ ենթադրելով զՀայաստան որոշ սահմաններով երկիր կամ թագաւորութիւն՝ կու տայ տանել այն սահմանները դրացի ազգաց—Մարաց, Ասորւոց և այլոց, և Արամայ՝ պաշտպանել, նա մանաւանդ ընդարձակել այն սահմանները։ Բայց այս գաղափարն հակառակ կու գայ նոյն Մարիբասեան պատմութեան, որ ինչպէս արդէն տեսանք՝ կ'ենթադրէ թէ Հայաստան կոչուած երկիրն, առ Հայկաւ և առ յաջորդօք նորա, անտէր և ամայի էր այնպէս, ինչպէս էր ասկէ դար մի յառաջ և ըստ մասին է տակաւին Ամերիկայի Միացեալ նահանգաց արևմտեան մասը և Աւստրալիա։ Նահապետք, ըստ բազմանալ սերնդոց իւրեանց՝ կը տարածուէին ընդ ամայի երկիրն ընդ այն։ Մինչև ցԱրամ այսպէս էր ըստ ենթադրութեան Մար Իբասայ։ Յայսպիսում վիճակի չկարէր երկիրն ունել որոշ սահմաններ, բայց եթէ պարտինք ասել, թէ Հայք անձամբ անձին սահման գծած էին ինքեանց, թէ մինչև աստ լիցի Հայաստան. և Արամ այն երևակայական գիծն այսր անցնողներուն, իբրև Հայաստանի սահմանը կոխողներու դէմ պատերազմ բացաւ։ Երկրին այն ամայի ենթադրեալ վիճակին մէջ կրնային Հայք և ուրիշ հեռաւոր ցեղեր հակառակ ուղղութեամբ յառաջ խաղալ դէպ յերեարս, և այսպէս ի մերձենալ նոցա միմեանց՝ կարէր կռիւ ծագել ի մէջ նոցա, և յաղթողն հարկաւ մարթէր արգելուլ միւսոյն յառաջադիմութիւնը—կամ նուաճել զնա և ընդարձակուիլ, և կամ, եթէ երկոքին հաւասար էին ուժով կը մնային ուր և հասած էին, և յայնժամ բնականապէս սահման կ'որոշուէր երկու ազգին մէջ։ Բայց մեր պատ-

մադիրն, իւր պատմութեան ենթադրեալ ժամանակին Հանգամանաց Հակառակ՝ զՀայաստան, Մարաստան, զԱսորիս, այլովքն Հանդերձ կ'ենթադրէ որոշ սահմաններով արդէն իրարմէ զատուած երկիրներ, ուստի և Հայաստանի կու տայ արևելեան, Հարաւային և արևմտեան սահմաններ, դրացի ազգաց կու տայ կոխել անցնիլ այն սահմաններն, և Արամայ՝ պաշտպանել զնոսին և անցնողներն ըստ սահման՝ Հալածել։

**26.** Խորենացին, ըստ Մար Իբասայ, յետ տալոյ նուաճել Արամայ Հայոց արևմտեան կողման երկիրներն—զԿապադովկիա և զՓոքր Հայս, Հրամայել բնակչացն «ուսանել զխօսս և զլեզուս Հայկական», և «լինել զբաղում անբնակ երկիր բնակչօք»՝ կը յաւելու. «Այս է առաջին և ճշմարիտ պատճառն վասն անուանելոյ զարևմտեան մեր կողմն *Առաջին* և *Երկրորդ*, այլ և *Երրորդ* և *Չորրորդ* Հայք, իսկ որ այլ ի յոմանց ասի ի յունական կողմանն՝ մեզ ոչ է Հաճոյ»։ Խորենացին Արամայ աշխարհակալութեան իբրև պատճառ մէջ կը բերէ Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայք կոչումներն, բայց կը խոստովանի, թէ Յոյնք այլազգ կը պատմէին, այլ թէ ինչպէս՝ չի յիշեր։ Գիտենք սակայն, թէ Առաջին, Երկրորդ, Երրորդ, և Չորրորդ, ինչպէս նաև Մեծ և Փոքր Հայք կոչումներն Համեմատութեամբ յետոյ են յոյժ քան զժամանակն որ ընծայի Արամայ, և չկարեն ամենևին իբրև ապացոյց ծառայել Արամայ աշխարհակալութեան։ Արդէն (էջ 11, 13, 40 և 65) Համառօտիւ խօսեցանք զվերոյիշեալ բաժանմանց, ինչպէս նաև զանուանց տուեալոց Հայաստանի այլևայլ ժամանակ։ Հոս Հարկ կը Համարինք ընդարձակագոյնս խօսել զայսցանէ։ Արմենիա անունն, որպէս տեսցուք ի ստորև՝ ի Դարեհէ Վշտասպեայ տրուեցաւ այն երկրին, զոր նախնի Սեմականք, յանուանէ Եբրայեցիք՝ կը կոչէին «Երկիր Արարատայ», և զոր մեք անուանեմք Հայաստան։ Դարեհ այսու անուամբ արար ուրոյն նահանգ Պարսից զՀայաստան, որ առ յաջորդօք նորա եղև սատրապութիւն, արևելեան և արևմտեան։ (Տես էջ 13, 67)։ Աղեքսանդր մեծ, որ Պարսից բոլոր երկիրներուն տիրեց՝ զԱրմենիա, որպէս և էրն, իբրև ուրոյն նահանգ յանձնեց կուսակալի մը։ Յետ Աղեքսանդրի Սելևկեանք երկու բաժնելով զԱրմենիա՝ զարևելեան մեծագոյն մասն յայնկոյս Եփրատայ կոչեցին Մեծ, իսկ զարևմտեան փոքրագոյն մասն յայսկոյս Եփրատայ կոչեցին Փոքր Արմենիա, և երկոքին յանձնուեցան կուսակալաց։ Մօտ յամն 189 նախ քան զՔր. Մեծ և Փոքր Հայք եղեն ուրոյն թագաւորութիւնք։ Ի Մեծ Հայս թագաւորեց Արտաշէս յարևելեան մասին առ Երասխաւ։ Ի Փոքր Հայս թագաւորեց Զարիադրէս (Զարեհ), որոյ ցեղը

տևեց մինչև 80 նախ քան զՔր.։ Այս թուականին էր որ Տիգրան մեծ զօրանալով միացուց բոլոր Արմենիա և ընդարձակեց իւր տէրութիւնը։ Յետ պարտութեան Տիգրանայ ի Հռոմայեցւոց և հրաժարելով դաշամբ (64) բոլոր երկիրներէն, զորս գրաւած էր արտաքոյ Մեծին Հայոց՝ Հռոմայեցիք գրաւեցին ընդ այլ գաւառս նաև զՓոքրն Հայս, և բաժնելով զնա յԱռաջին, յԵրկրորդ և յԵրրորդ Հայս՝ կու տային Փոքուն Ասիոյ թագաւորաց, դաշնաւորաց իւրեանց, իբրև յաւելուած իշխանութեան նոցա, մինչև Վեսպասիանոս որ արար նահանգ զերկիրն (Տակիտ. ԺԱ. 9, ԺԳ, Յովս. Նախն. պատմ. Ի. 5)։ Չորրորդ Արմենիա անունն, որ Մեծին Հայոց Ծոփաց նահանգին տրուեցաւ՝ աւելի նոր է։ Յետ անցանելոյ արևմտեան մասին Հայոց ի Յոյնս մօտ ի վախճան թագաւորութեան Արշակունեաց՝ Ծոփաց նահանգը կոչուեցաւ Չորրորդ Արմենիա, զոր յետոյ Յուստինիանոս (527—565) առնելով ուրոյն դքսութիւն՝ ասէ. «Կը հաստատենք նաև զՉորրորդն Արմենիա, որ առաջ, մինչ Հռոմէական նահանգ չէր՝ ուրիշ ազգի կը վերաբերէր, և կը բաղկանար խժական անուններէ, ինչպէս Խորձէն, Հանձիթ, Ծոփք, Հաշտեանք, Բալահովիտ, այլովքն հանդերձ։ Սոքա հռոմէական մեծութեան վայելուչ անուններ չէին և ոչ մեր նախնիներէն դրուած, այլ օտար տէրութենէ։ Ուստի զարդարելով զայս գաւառ մեծութեամբ և պատուով՝ առնեմք զնա դքսական իշխանութիւն» (Յուստ. Նոր Հրամ. ԼԲ.)։ Այս է Հայաստանի Մեծ և Փոքր, ինչպէս նաև Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայք բաժանմանց պատմութիւնը, ոչ թէ այն, զոր Խորենացին և յետնագոյն հեղինակք ի նմանէ առեալ կը պատմեն։

**27.** Գանք այժմ այլևայլ անուանց տուեալց Հայաստանի այլևայլ ժամանակ։ Յայտնի է, թէ երեք անուն տրուած է ի սկզբանէ մեր ազգին կամ երկրին—Արարատ, Արմենիա և Հայք։ Արարատ է շատ հին տեղական կամ աշխարհագրական անուն։ Արարատայ երկիր անունը կը գտնենք ի կիր արկեալ արդէն յԸ. դարուն նախ քան զՔր. առ Եբրայեցիս (Էջ 39) փոխանակ Հայաստանի, բայց թէ որչափ ընդարձակ կը կարծուէր յայնժամ Արարատ կոչուած երկիրը՝ յայտնի չէ. սաչափ միայն գիտենք, թէ Եբրայեցւոց Արարատաւ կ'իմացուէր Արմենիա, և այսպէս թարգմանուած կը գտնենք յետոյ այս բառը (Էջ 11, 5)։ Արարատ անունն ի վաղուց ծանօթ կ'երևի նաև ազգին։ Առ հնագոյն մատենագիրս մեր, առ Ագաթանգեղեայ և Բուզանդայ՝ զԱրարատ անունն իբրև արդէն ծանօթ ազգին՝ կը գտնենք տրուած Հայաստանի կեդրոնական նահանգին, և թերևս դրացի Սեմականք բնիկներէն ուսան այսպէս կո-

չել ոչ միայն Արարատեան նահանգը և թագաւորութիւնը (էջ 11. 39), այլ և զբոլոր Հայս։ Բայց թէ ընդէր յոյն մատենագիրք, Հերոդոտոս անգամ, Արմենիա միայն գիտեն և ոչ Արարատ, և Արմենիա անունը կու տան նաև երբ երկրին հին պատմութեան վրայ կը խօսին՝ պատճառն այս է, զի յոյն մատենագրաց բոլորը գրած են յետ Դարեհի Վշտասպեան, առ որով մուծաւ Արմենիա անունը։

Թէ որ լեզուի բառ է Արարատ և ինչ կը նշանակէ՝ չենք գիտեր։ Ի զուր է Խորենացւոյն, պատմական անձ համարելով զԱրայ, ջանալն հանել զԱրարատ յանուանէ նորա, իբրև Արայի դաշտ։ Նայելով մեր արդի տեղեկութեանց զհին լեզուաց և զպատմութենէ՝ լաւագոյն է այսպիսի վաղեմի, գրեթէ նախապատմական անուններ ստուգաբանելէ հրաժարել, քան մեկնութիւններ տալ նոցին ըստ քմաց։

Գալով Արմենիա, ըստ Պարսից Արմին կամ Արմնիք բառին՝ անունս այս, որպէս ասացաք (էջ 65), համեմատութեամբ նորագոյն է քան զանունն Արարատ, և բոլոր Հայաստանի, այն է Մեծ և Փոքր Հայոց համար գործածուած կը գտնենք առաջին անգամ յարձանագրութիւնս Դարեհի Վշտասպեայ (510 նախ քան զՔր.)։ Այս թագաւորը նուաճելով բոլոր միջին և արևմտեան Ասիա մինչև յԵգէական ծով այս նուաճեալ երկիրներուն հիւսիսային մասն, ի Մարաց մինչև ի Կապադովկիա, և Կորդուաց լեռներէն մինչև Կաւր գետ, այսինքն բոլոր այն երկիրը, զոր մեք Մեծ և Փոքր Հայք անուանեմք՝ արար ուրոյն նահանգ կամ սատրապութիւն Արմին անուամբ, զոր Յոյնք իւրեանց բարբառով կոչեցին Արմենիա։

Արմին կամ Արմէն բառին ևս նշանակութիւնն անծանօթ է մեզ։ Խորենացին ինչպէս զԱրարատ յԱրայէ՝ նոյնպէս զԱրմէն կամի հանել յԱրամայ, որպէս թէ մեծութիւն Արամայ անուան եղև պատճառ զի օտար ազգեր կոչեցին զմեզ Արմէն, այսինքն Արամեան։ Կ'երևի թէ առ Ստրաբոնիւ կար հին ինչ աւանդութիւն առ Յոյնս զանուանէն Արմենիա.—«Վերը յիշեցինք», ասէ Ստրաբոն, թէ ինչպէս Թեսաղացին Արմենոս, թողլով իւր ծննդեան քաղաքը զԱրմենիոն՝ գնաց զկնի Յասոնի և այս գիւղաքնին հետ մտաւ մինչև ի սիրտ Արմենիոյ. արդ, եթէ պարտ է հաւատալ պատմագրացն Կիւրսիղայ Փարսաղացւոյ և Մեդեայ Լարիսացւոյ, երկոքին ևս ընկերք զինուց Աղեքսանդրի՝ այս Արմենոսի պարտի Արմենիա զիւր անունն» (Ստրաբ. ԺԱ. 12)։ Բայց Յասոնի, Արգիական նաւորդաց գլխաւորին անուանէն յայտնի է, թէ այս աւանդութիւնն առասպելական է։ Եւրոպացիներէն ևս ոմանք այլևայլ ազգ ջա-

նացին մեկնել զանունն Արմենիա։ Ոմանք Սեմայ որդւոյն Արամայ անուանէն կը հանեն, ինչպէս Հարդման։ Ըստ Պոշարի՝ Արմենիա է Հար—Մինի, այսինքն՝ Մինեւոյ կամ Մինիատայ լերինք, հարը մեկնելով իբր սար–լեառն։ Վալ ի գիրսն որ կոչի Ասիա՝ զԱրմենիա կ՚ստուգաբանէ երկնաւոր լեառն, զանդկերէն մինու, պարկերէն մինէ բառէն, որ կը նշանակէ երկինք, երկնագոյն, երկնային։ Բայց այս ստուգաբանութեանց և ոչ մին ընդունելի է ըստ մեզ։ Արմէն անունը, որպէս արդէն ասացաւ՝ արուեցաւ ի Դարեհէ Վշտասպեայ և է հաւանականապէս բառ Զենդաւեստի, ուր երկիրն յարեմտից սահմանակից Մարաց՝ կոչուած է Էրիմէն։

Կը մնայ Հայ անունը։ Հայ ազգային անուն էր, այսինքն Հայք միայն կու տային զայս անուն իւրեանց ազգին և երկրին։ Ըստ մեզ՝ Հայ բուն Արարատայ ժողովուրդն էր, որոյ անուն և լեզուն տարածուեցաւ ընդ բոլոր Արմենիա առ Արշակունեօք, որ տիրելով նախ Արարատեան նահանգին՝ տակաւ միացուցին բոլոր Արմենիա ընդ իւրեանց ձեռամբ։ Արդարև գիտողութեան արժանի է, զի՝ Հայաստանի հին աշխարհագրական անուանք յԱրարատեան նահանգին և ի մօտակայս նորա մեծաւ մասամբ հայերէն են, և որչափ կը հեռանանք այն կեդրոնէն՝ այնչափ կ՚սկսին օտարանալ անուանք տեղեաց։ Բաւական ապացոյց է այս, թէ մեզ ծանօթ հայերէնն բուն Արարատայ նահանգին և թագաւորութեան լեզուն էր, ուստի և ի բնէ Հայ՝ Արարատ բնակող ցեղն էր։

Մինչև ցարդ կարելի չեղաւ գտնել նաև զնշանակութիւն Հայ անուան։ Քլապրոթ ի գիրսն, որ կոչի «Վաճառականութիւն ի Վիրս»՝ Վրաց աւանդութենէ մը առնլով տայ, թէ Հայք, Վիրք, Լեկիք (Լազք), Մինկրէլք և Կովկասացիք էին ի միոջէ նախահօրէ, որ կը կոչուէր Թարգամոս (Թորգոմ)․ և ուրիշ գերմանացի ճամբորդ մը, Կուլտէնշտադ, կը յաւելու, նոյնպէս յաւանդութենէ Վրաց, թէ Թարգամոս էր հայր եօթն որդւոց, որոց երէցն էր Աւոս, Հայոց նախնին։ Աւելորդ է ասել թէ այսպիսի աւանդութիւնք յառասպելաց սակի են։ Խորենացին զՀայս կամի հանել ի Հայկայ, ինչպէս յայտնի է, իբրև ի նահապետէն Հայոց։ Բայց ինչպէս Արմենակ Արմէն բառին՝ նոյնպէս Հայկ Հայ անուան նուազականն է, ուստի և իբրև ածանց նորա կ՚ենթադրէ Հայ բառն, այնպէս որ եթէ մէկն ի միւսէն եկած է՝ աւելի բանաւոր է զՀայկ համարել եկեալ ի Հայէ, քան զՀայ ի Հայկայ։ Մարթ էր թերևս ենթադրել, թէ Հայկ երևելի անձ կամ դիւցազն կամ աստուածութիւն էր ժամանակաւ յազգին, և ազգը յանուն նորա կոչեցաւ Հայ․ բայց Հայ և Հայկ անուանց մերձաւորութիւնն միայն ըստ հնչման՝ բաւական չէ տալ

ենթադրել զայս. հարկ էր թէ գէթ աւանդութիւն մը գտնուէր յազգին, թէ Հայք ի Հայկայ են, կամ թէ Հայկ՝ նահապետ էր ազգին. բայց այսպիսի աւանդութիւն մը, որպէս ցուցաւ էջ 3—5 չկար յազգին մինչև Խորենացին։

Արդի լեզուագէտ մը (Տ. Յովհ. Հիւնք.) Հայկ անունը կը համարի սեմական աստեղագիտութեան Այուք բառը, որ է անուն Կասիոպէ համաստեղութեան. նախնիք մեր չկարելով ընտրել Կասիոպէն Օրիոնէ՝ այս վերջնոյն սեպհականած են Հայկ (Այուք) անունը։

Իսկ Հայ բառին համար չէ անդէպ ասել, թէ է սեմական բառն Հայյ—կենդանի, զոր ընտրած են ինքեանց նախնի Արարատեանք, Թելադրեալ իրենց դրացի արիական ազգին զենտ կամ զանդիկ կոչմանէն, որ կը նշանակէ կենդանի։ Զայսոսիկ կը դնենք գիտնոց հետազօտութեան առջև իբրև թելադրութիւն։

**28.** Ըստ Մարիբասեան պատմութեան, որպէս թէ Նինոս ի համբաւոյ ուսեալ, թէ նախնին իւր Բէլ սպանեալ էր ի Հայկայ՝ ոխ ունէր ի սրտին ընդդէմ Հայոց և առիթ կը խնդրէր քաջին Հայկայ սերունդը ջնջել երկրէս երեսէն. բայց խորհելով թէ թշնամանալն ընդ Արամայ կարէր վտանգ բերել իւրում թագաւորութեան՝ ծածկելով զչարութիւն իւր կը հրամայէ Արամայ անկասկած վարել զիշխանութիւնն, և համարձակութիւն տայ նմա մարգարտէ վարսակալ կապել և երկրորդ իւր կոչել։ Շատ անհաւանական, մանաւանդ թէ անտեղի է քաղդէական մատենի մը մէջ յիշուած հաւատալ այսպիսի պատմութիւն մը, ուր Նինոս յայտնապէս կը նախատուի իբրև ոխակալ, անիրաւ, չարասիրտ, միանգամայն երկչոտ և վատ. իսկ Հայք կը նկարագրուին իբրև քաջ, հզօր և ահեղ քան զԱսորեստանեայս. հակասական է նոյնպէս, յետ ասելոյ թէ Նինոս կամեցաւ վրէժ խընդրել ի Հայոց, բայց չհամարձակեցաւ՝ յաւելուլ, թէ Նինոս հրամայեց Արամայ անկասկած վարել զիշխանութիւնն, վարսակալ ածել մարգարտէ և երկրորդ իւր կոչել։ Յայտնի է, թէ այս պատմութիւնն առնուած է ոչ թէ քաղդէական աղբերէ, այլ ի Դիոդորոսէ Սիկեղացւոյ, որ ինչպէս այլուր յիշուեցաւ՝ կը պատմէ զՆինոսէ, թէ յաղթելով Հայոց, կալաւ զթագաւոր նոցա Բարզանէս (Վարդան), այլ յետոյ հաստատեց զնա միւսանգամ յիշխանութեան։ Մար Իբասայ պատմութեան հեղինակն այս պատմութիւնը կը զարդարէ Հայոց պատիւ և Ասորեստանեցւոց նախատինք բերող պարագաներով։

**29.** Գանք այժմ թուականին զոր կու տայ Խորենացին Նինոսի և Արամայ, առնելով, որպէս ասէ՝ ուշիմ և ընթերցասէր Ասորւէ մը և Աբիւդենոսէ, բայց առած է Եւսեբեայ Քրոնիկոնէն։ Խորենացին ի Ե. գլուխ առաջին գրոցն՝ Յեմայ ազգաբանութիւնը դնելով

մինչև ցԱբրահամ՝ կը յարէ ի նոյն Նոյէ միւս երկու որդւոց—Քամայ և Յաբեթի ազգաբանութիւնը միևնոյն թւով անձանց, այսպէս.

| | | |
|---|---|---|
| Սեմ | Քամ | Յաբեթ |
| Արփաքսաթ | Քուշ | Գոմեր |
| Կայնան | Մեստրիմ | Թիրաս |
| Սաղայ | Նեբրովթ | Թորգոմ |
| Եբեր | Բաբ | Հայկ |
| Փաղեկ | Անեբիս | Արմենակ |
| Ռագաւ | Աբեղ | Արմայիս |
| Սերուք | Քայաղ | Ամասիա |
| Նաքովր | Արբեղ | Գեղամ |
| Թարայ | Նինոս | Հարմայ |
| Աբրահամ | Նինուաս | Արամ |

Խորենացին ցուցնելու համար այս ազգաբանութեանց ուղղութիւնը՝ կը բերէ «ուշիմ և ընթերցասէր Ասորւոյ» մը, զորոյ անունը չի յիշեր, և Աբիւդենոսի (զոր երբէք տեսած չէ, տես էջ 134) վկայութիւնը։

Այսպէս յիշուած գտանք, ասէ, յուշիմ և ընթերցասէր Ասորւոյ ումեմնէ, և հաւատարիմ թուեցաւ մեզ.... վասն զի թէպէտ Քամայ ծննդոց (յաջորդաց) տարիներն մինչեւ ցՆինոս յիշուած չենք գտներ ուրեք, կամ առ մեզ հասած չեն, և ոչ իսկ Նինոսի թուականը, իսկ Յաբեթի ծննդոց տարիներն ամենևին՝ սակայն ազգաբանութիւնը զոր դրինք՝ հաւաստի է. այսինքն, երեք ցեղերուն (Սեմայ, Քամայ, Յաբեթի) ծնունդք մինչև ցԱբրահամ և ցՆինոս և ցմերն Արամ՝ են մետասան. և այս ճշմարիտ է՝ թող չերկբայէ ոք, քանզի կը պատմէ զայս ի բազում իրս հաւատարիմն Աբիւդենոս, այսպէս. «Նինոս Արբէեղայ, Քայաղայ, Արբէեղայ, Անէեբայ, Բաբեայ, Բելայ»։ Նոյնպէս զազգաբանութիւն մեր ի Հայկայ մինչև ցԱրայն գեղեցիկ, զոր սպան վաւաշոտն Շամիրամ՝ կը թուէ այսպէս. «Արայն գեղեցիկ՝ Արամեայ, Հարմեայ, Գեղամեայ, Ամասեայ, Արամաիսեայ,Արամենակայ, որ եղև հակառակորդ, միանգամայն կենախուզ Բելայ»։ Զայս ասէ մեզ Աբիւդենոս յիւր առաջին արձանականին, ի մանր ազգաբանութեան, զոր յետոյ ոմանք բարձին։

«Այսպէս զսա կարգեալ գտաք ի յուշմագունէ ումեմնէ և յընթերցասիրէ Ասորւոյ, և հաւատարիմ թուեցաւ մեզ ասացեալն... զի թէպէտ և ամք ժամանակաց ծննդոցն Քամայ մինչև ցՆինոս ոչ ուրեք գտանին թուեալ, և կամ թէ առ մեզ ոչ հասեալ, այլ հաւաստեաւ և ոչ նորին ինքեան Նինոսի. իսկ մերոյն Յաբեթի՝ ամե-

նևին ոչ․ սակայն ասացեալ ազգաբանութիւնդ հաւաստի է․ երկ-ցունց ցեղիցն մետասան գոլով զԱբրաամ և զՆինոս և զմերն Արամ… և է ճշմարիտ, և մի ոք յերկուասցի, քանզի պատմէ մեզ զայսո-րիկ յոլով իրս հաւաստարիմն Աբիւդենոս, և ասէ այսպէս․ «Նինոս Արբէլեայ, Քայաղայ, Արբէլեայ, Անեբայ, Բաբեայ, Բելայ»։ Նոյնպէս և զմերն Հայկայ մինչև զԱրայն գեղեցիկ, զոր սպանեալ կաթոտն Շամիրամ թուէ այսպէս․ «Արայն գեղեցիկ՝ Արամեայ, Հարմեայ, Գեղամեայ, Ամասեայ, Արամայիսեայ, Արամենակայ, որ եղև Հայկազն Բելայ միանգամայն և կենախուզ»։ Եւ զայս մեզ Աբիւդենոս յիւրում առաջնում արձանականի ի մանր ազգաբանու-թեան ասէ, զոր աստ ուրեմն յետոյ ոմանք բարձին։

Այսպէս ըստ Խորենացւոյն Արամ և Նինոս լինին ժամանակակից Աբրահամու, ուստի և ըստ ժամանակագրութեան Եբրայեցւոց, աւելի քան 2,000 ամօք յառաջ քան զքրիստոնէական թուականն։ Բայց զՆինոս դնել առ Աբրահամու, այսինքն աւելի քան 2,000 ամօք նախ քան զՔր․ պատմական չէ, և ոչ հաշիւ «ուշիմ և ընթերցասէր» Մարաբայ կամ Աբիւդենոսի, այլ Եւսեբեայ, որ կ'առնու ի Կտեսեայ՝ Կտեսիաս ի Շամիրամայ մինչև ցԹասոն կամ Արգոնաւորդաց նաւար-կութիւնը կը դնէ հազար ամ․ և որովհետև Արգոնաւորդաց նա-ւարկութիւնը կը համարուի իբր 1200-ին նախ քան զՔր․՝ ապա թուական Նինոսի ըստ Կտեսեայ լինի իբր 2200-էն նախ քան զՔր․։ Խորենացին ոչ զԿտեսիաս գիտէր, և ոչ զգիրս Դիոդորոսի տեսած էր, որպէս ինքն իսկ վկայէ (գիրք Բ. Ա.), այլ զԵւսեբիոս միայն ունէր, յորմէ որպէս բազում ինչ՝ նոյնպէս Նինոսի այս ժամա-նակագրութիւնն առած է։ Գիտելի է սակայն, զի զՆինոսէ և զՇա-միրամայ գրուածներուն և ոչ մին պատմական յարգ ունի, քանզի յոյն պատմիչք որ խօսած են զՆինոսէ և զՇամիրամայ՝ զարերով յետոյ են քան զենթադրեալ թուականն Նինոսի և Շամիրամայ, և հաւաքելով գրած են արևելեայց աւանդութիւններէն միայն, որ շատ անգամ զդիս և զդիւցազունս կը դասեն ի կարգս թագաւո-րաց իւրեանց։ Նինոսի և Շամիրամայ գալով՝ ասեմք թէ ոչ միայն թուական նոցա, այլ և անձինք տարակուսական են։ Շամիրամայ համար գրեթէ ստոյգ է, թէ հին Քուշեանց Անահիտը կամ Աստղիկն էր (տես էջ 22). Հաւանական է թէ նաև Նինոս Ասորեստանի Նի-նիբ աստուածն է, որ իբրև զԱթենաս Յունաց՝ իմաստութեան միանգամայն պատերազմի աստուած էր։

**30**. Մարիբասեան պատմութիւնն Արամայ յաջորդել կու տայ զորդի նորա զԱրայ գեղեցիկ իբրև ժամանակակից Շամիրամայ․ զոր հին աւանդութիւնն հռչակէ իբրև քան զայլ թագաւորս Աս-

ընտանի իմաստուն, հզօր և աշխարհաշէն։ Մարիբասեան պատմութիւնն յետին ծայր փութով ենթադրելով զՇամիրամ՝ յօգէ զնմանէ այն պատմութիւնը, զոր ի վեր անդ տեսանք (էջ 106-109), և որ արժանի է կոչուիլ, նոյն իսկ Խորենացւոյն բառով Յաղագս Բիւր. Աժդ.)՝ *փծուն* առասպել. Կ'երևի թէ Մար Իբասայ Հայկազանց պատմութիւնն հաւաքելով Նինուէի դիւանը դնող Ասորեստանցին մտանաւոր դիտում ունէր պարսաւել Ասորեստանի թագաւորները. քանզի նաև հոս Շամիրամ, Ասորեստանի այն մեծ աշխարհաշէն թագուհին, կը փառահամբաւի իբրև անուանի բոզ, հոմանիներէ պաշարեալ, վհուկ, ոնապաշտ, դիւապաշտ, միանգամայն անմիտ։ Արդարև զինչ քան զայս մեծ անմտութիւն, Շամիրամայ պէս թագուհւոյ մը հեռաւոր մարդու մը զոր տեսած չէր, ի համբաւոյ միայն այնպէս սիրահարել, մինչև ստէպ պատգամաւորօք կոչել զնա ի Նինուէ, և որպէս թէ բոլոր Ասորեստանի մէջ գեղեցիկ երիտասարդ կը պակսէր այնպիսի տիկնոջ՝ այն տաժանելի արշաւանքն յանձն առնլով բազմագունդ զօրօք գալ յԱսորեստանէ ի Հայաստան և պատերազմ տալ, զօրապետներուն այն անիմաստ պատուէրը տալով՝ չսպանանել զԱրայ ի կռուին։ Ոչինչ ընդհատ զարմանալի էր Հայոց զԱրայ ողջացած հաւատալը։ Ի ստորև պիտի տեսնենք, թէ ո՛վ էր Արայ. առ այժմ հետևինք պատմութեան կարգին։

Ըստ Մարիբասայ, Շամիրամ իւր հոմանիներէն մին զարդարելով համբաւեց, թէ Արայ էր, զոր աստուածք լիզելով ողջացուցին, և Հայք, որ ի պատերազմ գրգռեալ էին առ ի խնդրել զվրէժ թագաւորին իւրեանց ի Շամիրամայ, լսելով զայս՝ հանդարտեցան։ Այս պատմութենէն կը հետևի, թէ Հայք զԱրայ արդեամբ ողջացած հաւատացին։ Զարմանալի է արդարև, թէ ինչպէս Հայք, գէթ նախարարները, որ հարկաւ տեսան այն յարուցեալ կարծուած սուտ Արայն՝ խաբուեցան, զբուն զԱրայն կարծելով զնա։ Մար Իբասայ այս պատմութենէն սա ևս կը հետևի, թէ սուտ Արայն, զոր Շամիրամ զարդարելով դրաւ ի տեղւոջ Արայի՝ թագաւորեց գէթ առ ժամանակ մի. բայց պատմութիւնը մոռանալով զայս և առանց ամենևին յիշելոյ, թէ ինչ եղաւ սուտն Արայ՝ ասէ, թէ Շամիրամ յետ մահուանն Արայի գեղեցկի թագաւորեցոյց Հայոց զորդի նորա զԿարդոս, որ ի Նուարդայ սիրելի կնոջէ նորա ծնած էր, առ խանդաղատանացն, զոր ունէր առ Արա՝ նորին անուամբ կոչելով Արայ։

**31.** Խորենացին յետ պատմելոյ Շամիրամայ սիրահարութիւնն ընդ Արայի, պատերազմը և չքնութիւններն ի Հայս՝ կը յաւելու զնկարագիր կենաց և մահուան Շամիրամայ, առնլով յԵւսեբեայ

Քրոնիկոնէն, ուր յիշուած են ի յոյն պատմչաց — ի Կտեսեայ Դիոդորոսէ, ի Կեփաղիոնէ և յայլոց մահ և թաղումն Նինոսի ի Նինուէ, թագաւորելն Շամիրամայ, պատերազմն ընդ Զրադաշտի ուրումն արքայի Բակտրիացւոց, Շամիրամայ որդւոց կոտորածն ի Նմին իսկ ի Շամիրամայ, պատերազմն ի Հնդիկս, պարտութիւն և փախուստ նորա և մահ յիւրուրոյն որդւոյ ի Նինուասայ։ Բայց Խորենացին ճշմարտագոյն կը համարի Մարիբասայ պատմութիւնն, իբրև բուն Քաղդէացւոց մատեաններէն առնուած և համաձայն Հայոց առասպելներուն զՇամիրամայ.—«Այլ հաւաստի թուեցաւ մեզ որ ի Մար Աբայն Կատինայէ քննութիւն քաղդէական մատենին քան զայսոսիկ (զպատմեալսն ի Յունաց). քանզի ոճով իմն ասէ։ . . . Առ այսոքիւք և աշխարհիս մերոյ առասպելք զբազմահմուտ Ասորին արդարացուցանեն» (Խոր. Ա. ԺԸ.)։

Ըստ Մար Իբասայ, Շամիրամ ի գալ իւրում ամի ամի յիւր ամարանոցի քաղաքն ի Վան, զոր շինեաց ի Հայս՝ կուսակալ կը թողուր Ասորեստանի և Նինուէի զԶրադաշտ մոգ նահապետ Մարաց։ Այսպէս առնելով երկար ժամանակ՝ հուսկ ուրեմն բոլորովին հաւատաց ի նա զիշխանութիւնն . . . ։ Որովհետև շատ կը սիրէր Շամիրամ իւր հոմանիները՝ բոլոր իշխանութիւնը և գանձը պարգևեց նոցա, անփոյթ առնլով զորդիս իւր, որոց ի չափ հասեալ՝ կը խորհէին զնա թողուլ դիւական տռփանքը և աւանդել զիշխանութիւն իւր և զգանձս որդւոց իւրոց։ Այլ Շամիրամայ ևս առելի զայրացեալ՝ կ'սպաննէ բոլոր որդիները, և կրտսերն Նինուաս միայն կ'ազատի։ Իսկ Զրադաշտ յանցաւոր գտնուելով առ տիկինն՝ կ'ապստամբի. Շամիրամ պատերազմ կը բանայ ընդդէմ Զրադաշտի և յաղթուելով կը փախչի ի Հայս, ուր պատեհութիւն գտնելով Նինուաս՝ կ'սպաննէ և ինքն կը թագաւորէ։

«Սա (Շամիրամ) հանապազ յամառնայինսն ի խաղալն իւր ի կողմանս հիւսիսոյ ի քաղաքն ամարաստանի, զոր շինեաց ի Հայս՝ կողմնապետ Ասորեստանի և Նինուէի թողու զԶրադաշտ մոգ և նահապետ Մարաց։ Եւ ի բազում ժամանակս զայս այսպէս կարգեալ Շամիրամայ՝ ամենևիմբ հաւատայ նմա արդարև զիւր իշխանութիւնն։ . . . Բարեկամացաւ հոմանեաց իւրոց, պարգևելով զամենայն իշխանութիւնն և զգանձս, ոչինչ վասն որդւոց իւրոց առնելով փոյթ յանձին։ Իսկ ի հասակ և ի տիս հասեալ որդւոց նորա՝ յիշեցուցանեն նմա զայս ամենայն, կարծելով ցածուցանել զնա ի դիւական մրցական տռփանացն, և աւանդել զիշխանութիւն և զգանձս որդւոց իւրոց։ Ընդ որ առաւել զայրագնեալ՝ սատակէ զամենեսեան, և մնաց Նինուաս միայն, որպէս վերագոյն ասացաք։ Ի լինել

ինչ սպառնայր Զրադաշտի առ տեկինն և հակառակութեան ի ներքս անկանելոյ՝ պատերազմի ի վերայ նորա Տամիրամ, քանզի բռնանալ ի վերայ ամենայնի խորհէր այրն։ Եւ ի սաստկանալ պատերազմին՝ փախստական լինի Տամիրամ յերեսաց Զրադաշտի ի Հայս։ Առ ժամանակ վրէժխնդրութեան պատեհի գտեալ Նինուաս՝ սպանանէ զմայրն, և ինքն թագաւորէ ի վերայ Ասորեստանի և Նինուէի։

Այս պատմութիւնն հերքել ջանալ աւելորդ է, քանզի թող զի Տամիրամ և Զրադաշտ պատմական անձինք չեն և բոլոր պատմութիւնը վէպ է՝ կայ նաև հակասութիւն պատմութեան մէջ։ Զարմանք է, թէ ինչպէս Տամիրամ, որ բոլոր իշխանութիւնը հաւատացած էր Զրադաշտի՝ կրցաւ նոյն իշխանութիւնը միանգամայն իւր հոմանիներուն պարգևել։ Անտեղի է նաև Ասորեստանի արքունի մատեաններուն մէջ նկարագրուած հաւատալ (եթէ կային մատեանք) այն մեծագործ և հզօր թագուհին այլասեռեան, որդեսպան, «ախտաւէր», «չարատէր», և առ «վաւաշ պոռնկական բարուց», և «ի դիւական տռփանաց»՝ տէրութեան իշխանութիւնը և քանիք հոմանիներուն մատնող։ Արդարև յոյն պատմիչք ևս այս մոլութեանց շատը կու տան Տամիրամայ, բայց Յոյնք ոչ թէ «քաղդէական մատեաններէ» կ'առնուն, այլ յաւանդութենէ Մարաց և Պարսից, որ թշնամի էին Ասորեստանեայց։

Գալով Տամիրամայ և Զրադաշտի պատերազմին՝ ասեմք թէ այս պատմութիւնն այլաբանութիւն է և կը նշանակէ Արիականաց հին ցեղային կռիւն ընդ Քուշեանս, որ կ'իմացուին Տամիրամաւ, ինչպէս Արիականք՝ Զրադաշտիւ։ Արդարև ասի, թէ ի միում ի յետին կրօնական գրոց Պարսից կը յիշուի Տամիրամայ պատերազմն ընդ Զարաւըշտի, իբրև ամբարիշտ ցեղի մը ընդ բարեպաշտի. և, ըստ մեզ՝ Հայոց առասպելն զՏամիրամայ Պարսից կրօնական երգերէն առնուած էր, ինչպէս Տիգրանայ և Աժդահակայ կռիւն Վեդայէն առնուած վէպ է (տես էջ 51) Զենդի միջոցաւ։ Այսպէս նաև Արայի և Տամիրամայ սիրահարութեան պատմութիւնն արեւելեան ազգերէն շատերուն ծանօթ բարոյական առասպելի մը նմանութիւնն է։ Տամիրամ Ասորեստանեայց, կամ մանաւանդ Քուշեանց աստուածուհին էր, իբրև Յունաց Ափրոդիտէն կամ Արտեմիսը։ Օրիոնի առասպելն արդէն յիշեցինք (էջ 4.), այսինքն թէ ինչպէս Արտեմիս սիրահարեալ Օրիոնի, որ էր երիտասարդ գեղեցիկ, և արհամարհեալ ի նմանէ՝ բարկանալով ետ խայթել զնա կարճի, բայց յետոյ զղջալով ողջացուց զնա և փոխեաց յերկինս, ուր Օրիոն է մին ի գեղեցկագոյն համաստեղութեանց։ Միևնոյն է Արայի առասպելն։ Տամիրամ, արևելեան Անահիտն, կը սիրէ զԱրայ (գե-

գեցիկ), կ՚արհամարհէ ի նմանէ, նիւթէ զմահ նորա, բայց զղջալով կը ջանայ ողջացնել զնա, և որ ի կարգին։ Կանացի հրապուրանաց դէմ արական զգաստութեան այս այլաբանական օրինակը կը գըտնենք նաև ի գիցաբանութեան ուրիշ արևելեան ազգաց, զորօրինակ Փիւնիկեցւոց, Եգիպտացւոց և Եբրայեցւոց, ինչպէս յայտնի է Յովսեփայ գեղեցիկ պատմութենէն։ Պատմութեան էական մասը միևնոյն է յամենեսին. միշտ կին մը դարան կը գործէ գեղեցիկ երիտասարդի մը զգաստութեան, և արհամարհուելով դաւաճանութիւն կը նիւթէ, բայց ի վերջոյ առաքինութիւնը կը բարձրանայ յաղթանակաւ։

**32.** Խորենացին, ինչպէս տեսանք էջ 110, յետ պատմելոյ ի ԺԸ. գլուխ առաջին գրոցն զմահն Շամիրամայ, յաջորդ գըլխոյն մէջ կը դնէ յԱնուշաւանայ մինչև Սկայորդին իբր 26 կամ 27 Հայ իշխանաց «ծննդաբանութիւնը», կամ լաւ ևս է ասել՝ յաջորդութեան ցուցակը, և այս իշխանաց թիւն հաւասար դնելով թուոյ եբրայեցի իշխանաց՝ որ այն միջոցին տիրեցան, այս հաւասարութիւնն իբրև սուտութեան ապացոյց կը համարի իւր աշխատութեան.—«Հաւասարութիւն թուոյ կարգի պատանեաց՝ զճշմարտութիւն աշխատասիրութեանս մերոյ ակնարկէ» (Խոր. Ա. ԺԹ.)։ Բայց միթէ Մար Իբաս զատու յԱնուշաւանայ մինչև Սկայորդին իբր 27 Հայ իշխան—Պարէտ, Արբակ, Սուր, Ամպակ, Առնակ, Նորայր այլովքն հանդերձ, քաղդէական մատենին մէջ, հաւասար թուոյ եբրայեցի իշխանաց, թէ Խորենացին կամ այլ ոք, Անուշաւանայ կարծեցեալ ժամանակէն մինչև ի կարծեցեալ ժամանակ Սկայորդւոյն տիրող եբրայեցի իշխանաց թուոյն համեմատ Հայ իշխանաց անուններ ստեղծեց. քանզի, որպէս տեսցաք այլուր՝ աւելի հաւանական է այն անունները ենթադրել շինուած, քան թէ քաղդէարէնէ յունարէն թարգմանուած մատենի մը մէջ գրուած և ապա աղաւաղութեամբ և ուղղագրութեամբ ի Հայ փոխուած։

Բայց թողլով այս խնդիրը՝ գանք պատմութիւնը քննել։ Խորենացին ժամանակին միջոցը որ յԱնուշաւանայ մինչև Սկայորդին՝ կը համեմատէ ժամանակի այն միջոցին, որ է ի Նինուասայ մինչև ի կործանումն Ասորեստանեայց պետութեան ի ձեռն Վարբակայ ըստ Կտեսեայ, այսինքն 1896-էն մինչև 880 նախ քան զՔր., միջոց մը, որ կը պարունակէ աւելի քան 1000 տարի։ Զարմանք է սակայն, թէ ինչպէս Մարիբասեան մատեանը չի գտներ արժանի ինչ յիշատակաց այս հազար տարուան մէջ։ Արդարև Խորենացին այս ժամանակէն կը յիշէ ինչ ինչ, բայց ոչ ի Մար Իբասայ, այլ որպէս ինքն ասէ, «ի զրոյց և ի բանից արանց իմաստնոց և յաջոսիկ քաղաքահասակաց»

(տես էջ 111)։ Առաջին դէպք յիշեալ ի Խորենացւոյն ի վերոյիշեալ հազարամեայ ժամանակէն՝ է քանանացի ցեղի մը գաղթականութիւնն ի Հայս։ Խորենացին քանանացի ցեղին գաղթականութիւնը կը պատմէ այսպէս. Ի կատորելն, ասէ, Յեսուայ զՔանանացիս՝ երևելիք ի նոցանէ գնացին փախստական յԱգռաս? (յԱփրիկէ), ինչպէս կը գտնուի ցարդ յԱփրիկէ քարերու վրայ դրոշմուած, թէ Մեք, նախարարք Քանանացւոց, փախչելով ի Յեսուայ գողոյ՝ եկանք բնակել աստ։ Որպէս և ոմն ի պատուականաց նոցա Քանանիդաս եկաւ Հայաստան. և ստուգելով գտանք ի սմանէ սերեալ ըզԳնթունիս, և բարք այս ցեղին կը ցուցնեն, թէ արդարև քանանացի են նոքա։ «Ի սատակել արքա (Յեսուայ) զՔանանացիս՝ անցին ի սմանէ փախստականք յԱգռաս . . . և յայտնի որոշմամբ յարձանսն Ափրիկեցւոց աշխարհին գրեալ կան մինչև ցայսօր ժամանակի արդարապէս այսպէս. Ի Յեսուայ գողոյ փախուցեալ՝ մեք նախարարք Քանանացւոց եկաք բնակել աստ։ Յորոց մի և Քանանիդաս պատուականագոյն մեր ի Հայս։ Եւ ստուգեալ հաւաստի գտաք զսերունդ ազգին Գնթունեաց ի սմանէ առանց հակառակութեան լեալ. զայս և բարք արանց ազգին յայտնեն՝ քանանացի գոլ» (Խոր. Ա. ԺԹ)։

Պրոկոպիոս ևս, յոյն պատմիչ առ Յուստինիանոսիւ, կը յիշէ զայս պատմութիւն (Պրոկոպ. Պատմ. պատեր. Վանդալ. Բ. 10)։ Գալով Գնթունեաց՝ արդարև կ'երևի թէ կար աւանդութիւն առ Հայս, թէ Գնթունիք, ինչպէս նաև Բագրատունիք՝ ի բնէ պաղեստինացի էին. բայց Զօրայ նահապետ Գնթունեաց կը հերքէ այս աւանդութիւնն իբրև «վաղնջուց զրոյց և պառաւեալ առասպել», որպէս պատմէ նոյն ինքն Խորենացին ի ԻԴ. գլուխ Բ. գրոցն։ Զօրայ նահապետ Գնթունեաց յամբաստանելն առ Արշամայ զԵնանոս Բագրատունի, որ արձակած էր զՀիւրկանոս քահանայապետ Հրէից, Տիգրանայ գերիներէն՝ կը խօսի այսպէս. Գիտացիր, ասէ, արքայ, զի Ենանոս խորհեցաւ ապստամբել, յորդորեց և զիս խնդրել ի Հերովդէէ ժառանգութիւն տալ մեզ մեր բնիկ երկրին մէջ (ի Պաղեստին), քանզի խայտառակ եղանք, ասէր, աստ։ Իսկ ես յանձն չառնլով, ասեմ. Մինչև ցե՞րբ կը խաբուինք հին զրոյցներով և պառաւանց առասպելօք, պաղեստինացի կարծելով զմեզ, և այլն։ «Գիտեա, արքայ, զի ապստամբել ի քէն կամեցաւ Ենանոս, խորհուրդ ընդ իս բերելով, զի երդումն խնդրեսցուք ի Հերովդէէ Թագաւորէ Հրէաստանի՝ ընդունել զմեզ և տալ մեզ ժառանգութիւն ի բնակ երկրի մերում, քանզի նորակտուտ ծանակեցաք յաշխարհիս յայսմ։ Եւ իմ ոչ առնլով յանձն՝ ասեմ ցնա. Ընդէ՞ր

պատրիմք զրուցօք վաղնջուց և պատուեալ առասպելօք, պաղեստինացիս զմեզ վարկանելով» և այլն (Խոր. Բ. ԻԴ.)։

2. Երկրորդ դէպքն է «անխորհուրդ ապստամբութիւնն» Հայկակայ։ Զայսմ անխորհուրդ ապստամբութենէն Հայկակայ (տես էջ 111) գիտելի է, զի ըստ յոյն պատմչաց՝ Ասորեստանի թագաւորին Բեղոքոսի Բ-ի կամ Դ-ի ժամանակ Բաբելացիք գալով յաւարի առին զՆինուէ։ Նինուէացիք այս յարձակման պատճառ համարելով կառավարութեան թուլութիւնը՝ կ'ապստամբին ընդդէմ Բեղոքոսի, և արքունի պարտիզաց վերակացուն Բեղէգարաս (ըստ Խորենացւոյն Բաղոտոռէս) ընկենլով զԲեղոքոս՝ ինքն կ'առնու թագաւորութիւնը, և Բաբելացիք նորէն կը նուաճուին։ Այս պատմութենէն, ինչպէս կ'երևի, առիթ առնլով Խորենացին՝ Ասորեստանի հարկատու կարծուած հայ իշխաններէն միոյն, Հայկակայ, զոր ժամանակակից կը դնէ Բեղոքոսի՝ կու տայ որպէս թէ «յանխորհուրդս» ապստամբել այն միջոցին և ապա սպաննուիլ (տես էջ 111)։

3. Երրորդ դէպքը, զոր իբր Հայոց վերաբերեալ կը պատմէ Խորենացին ի միջոցի անդ վերոյիշեալ 1,000 ամաց՝ է երթալն Զարմայրի, Ասորեստանի Տևտամոս թագաւորին հրամանաւ, իբրև զօրավար եթովպացի զօրուն՝ յօգնութիւն Պրիամու և մեռանել ի քաջացն Հելլենացւոց (տես էջ 111)։ Հայ նախարար մը տրովական պատերազմին մասնակցել յայտնի է թէ Հոմերոսի Եղիականէն թելադրուած գաղափար է քան ճշմարիտ պատմութիւն։ Ըստ Հոմերոսի (Հատկոտ. Հոմեր.) և ըստ Դիոդորոսի Սիկեղացւոյ (Գիրք Բ. Գ. 22) յորմէ առնու Եւսեբիոս, Ասորեստանի թագաւոր մը, Տևտամոս, եղիական պատերազմին վերջին տարին զՄեմնոն ոմն (որ առասպելեալ անձ է, Արշալուսոյ որդի, Եթովպիոյ և Եգիպտոսի իշխան) քսան հազար զօրօք կը ղրկէ յօգնութիւն Տրովացւոց։ Մեմնոն յետ գործելոյ բազում արութիւնս ի տրովական պատերազմին ի նպաստ Պրիամու՝ կ'սպանուի յԱքիլլեայ։ Խորենացին այս պատմութիւնը կարդալով առ Եւսեբեայ, և որպէս հաւանական է կարծելով զպատերազմն զայն ստուգիւ լեալ՝ խորհած է դեր մը խաղալ տալ ի նմա Զարմայրի, զոր Տևտամոսի ժամանակակից կը դնէ։ Բայց պատմութիւնը ոչ զՏևտամոս կը ճանչնայ և ոչ տրովական պատերազմը, եթէ ոչ ըստ էութեան, գէթ ըստ կերպին ըստ որում կը պատմէ Հոմերոս։

**33.** Հրէից պատմութենէն գիտենք, թէ Ասորեստանեայց թագաւորին Սենեքերիմայ երկու հայրասպան որդիքն Ադրամելէք և Սանասար փախան յերկիրն Արարատայ (տես էջ 39)։ Խորենացին մոռնալով յիշել զայս ի կարգի պատմութեան՝ կը պատմէ ի սկզբան

ԻԳ. գլխոյ առաջին գրոցն։ Մոռացանք, ասէ, խօսել զՍենեքերի-մայ։ Իբր ութսուն ամօք յառաջ քան զԹագաւորութիւնն Նաբու-գոդոնոսորայ եկաց Թագաւոր Ասորեստանի այս Սենեքերիմ, որ զԵրուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ արքայիւ Հրէից և սպանաւ յորդւոց իւրոց յԱդրամելայ և ի Սանասարայ, որ եկան փախստա-կան առ մեզ։ Քաջ նախնին մեր Սկայորդի, մեր երկրին Հարաւային արևմտեան կողմը, նոյն իսկ Ասորեստանի (?) սահմանին մօտ, բը-նակեցոյց զմին ի սոցանէ, այսինքն զՍանասար, յորմէ սերեցան Սիմ կոչուած լերան բնակիչք։ Յետ ժամանակաց երևելիք ի սոցանէ հաւատարմութիւն ցուցեալ առ թագաւորս մեր (Արշակունիս)՝ ա-ռին այն կողմերուն բդեշխութիւնը։ Իսկ Արգամոզան (Ադրամե-լէք) բնակեցաւ յարևելից հարաւոյ երկրին մերոյ, և ի սմանէ սե-րեցան, ասէ պատմագիրն (Մար Իբաս), Արծրունիք և Գնունիք։ «Ի ժառանգումն եկն արդեւք յաղագս Սենեքերիմայ. քանզի ութ-սուն ամօք, աւելի կամ պակաս, յառաջ քան զԹագաւորութիւնն Նաբուգոդոնոսորայ էր և Սենեքերիմս կացեալ արքայ Ասորեստա-նի, որ զԵրուսաղէմ պաշարեաց առ Եզեկիայիւ Հրէից առաջնոր-դաւ. զոր (զՍենեքերիմ) սպանեալ որդւոց. Նորա Ադրամելայ և Սանասարայ՝ եկին փախստական առ մեզ։ Յորոց զմին յարևմտից Հարաւոյ աշխարհիս մերոյ, մերձ ի սահմանս Նորին Ասորեստանի բնակեցուցանէ Սկայորդին մեր քաջ նախնին, այսինքն զՍանա-սարն. և ի սմանէ սերեալ լցին զՍիմն ասացեալ լեառն։ Իսկ պերճ-քըն և գլխաւորքն ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութիւն վաստա-կոց առ Թագաւորսն մեր ցուցեալ՝ զբդեշխութիւն կողմանցն ար-ժանաւորեցան առնուլ։ Իսկ Արգամոզանն յարևելից հարաւոյ նո-րին կողման բնակեալ. ի սմանէ ասէ պատմագիրն լինել զԱրծրու-նիս և զԳնունիս» (Խոր. Ա. ԻԳ.)։

Խորենացին ի Սարասարայ (զոր Սանասար կ'անուանէ) սերել կու տայ զԱղձնիս, և յԱդրամելեքայ (զոր կը կոչէ Ադրամէլ, նաև Արգամոզան, չենք գիտեր ուստի առնլով)՝ զԱրծրունիս և զԳնու-նիս։ Թէ Գնունիք, և մանաւանդ Արծրունիք Սենեքերիմայ որ-դւոց սերունդէն էին՝ թուի լինել ստոյգ, քանզի երբ Շաւասպ Արծրունի, ըստ նոյն Խորենացւոյն, ի մականախաղուն ի ձեռաց Յազկերտի որդւոյն Շապհոյ հանեց գնդակը, և Շապուհ մականաւ եհար զնա ասելով, «Ծանիր զքեզ»՝ Շաւասպ պատասխանեց. «Այո, ճանաչեմ և զիս արքայորդի ի սերմանէ Սանասարայ, և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո համբուրել զբարձն արքայի»։ Մի-այն զարմանք է, թէ մինչ հօս Շաւասպ զԱրծրունեաց ասէ թէ ի Սանասարայ սերեցան՝ Խորենացին ասէ թէ սերեցան յԱրգամոզա-

նայ, յեղբօրէն Սանասարայ։ Չենք գիտեր թէ միևնոյն ցեղը եր-կու եղբայրներէ միանգամայն ինչպէս կրնայ սերիլ. կամ թերևս Խորենացին յերրորդ գիրս իւր (գլ. ԾԵ.) ի յիշելն զբանս Շաւասպայ՝ մոռցած էր ինչ որ յառաջին գիրս իւր (գլ. ԻԳ.) գրած էր զորդւոց Սենեքերիմայ։

Յենթադրութեան աստ Խորենացւոյն, որ զգալուստ որդւոցն Սենեքերիմայ ի Հայս կը համարի լեալ առ Սկայորդւով, այսինքն յառաջ քան զկարծեցեալ կործանումն տէրութեան Ասորեստանի ի ձեռն Վարբակայ՝ հակասութիւն կայ, քանզի Սկայորդին, իբրև հայր Պարուրի՝ չկարէ լինել յառաջ քան զկարծեցեալ կործանումն տէրութեան Ասորեստանի ի ձեռն Վարբակայ, միանգամայն ժամանակակից Սենեքերիմայ, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։

Հոս կամիմք գիտել ի պատմութեան աստ Խորենացւոյն ուրիշ կէտ մը։ Մեր հայրենասէր ծերունին, որ առիթ չի փախցուներ ըզ-Հայս առնել միջամուխ ամէն գործի որ կը յիշուի ի պատմութեան այնր ժամանակի՝ կարգալով Սենեքերիմայ որդւոց փախուստն ի Հայս, գիտնալով ևս թէ ի նոցանէ սերեալ կը պատմուէին Արծրունիք՝ հայ իշխանի մը ընդունել կու տայ արքայազուն փախստականները և տայ նմա՝ բնակեցուցանել զՍանասար—Սիմ և Սանասար անուանց ձայնի նմանութեան նայելով—Սիմ լերան, այսինքն Աղձնեաց կողմը, զոր կը կոչէ սահմանակից Ասորեստանի, որ Միջագետաց մանաւանդ քան Ասորեստանի սահմանակից էր. իսկ զԱրգամոզան բնակել կու տայ յարևելից նոցա, ուր էր Արծրունեաց երկիրը, ուստի և յԱրգամոզանայ սերել կու տայ այս ցեղը, մինչ Արծրունիք, որպէս տեսաք՝ ըստ աւանդութեան իւրեանց ի Սանասարայ սերեալ համարէին զինքեանս։

Գիտել պարտ է, զի Խորենացին որ հոս Սիմ անունն ի Սանասարայ կը թուի հանել՝ այլուր (Ա. Զ.) ի Սեմայ կը համարի կոչեցեալ այնպէս. և ի հաստատութիւն այսորիկ կը բերէ զբանս Ողոմպիոդորայ ուրումն անծանօթ փիլիսոփայի, որ որպէս թէ յանգիր աւանդութենէ կըպատմէր այսպէս. Պատմեմ ձեզ անգիր զրոյց, որ աւանդութենէ հասած է առ մեզ, և զոր գեղջուկներէն շատերը կը զրուցեն ցարդ։ Կար, ասեն, զՆոյէ և զորդւոց նորա մատեան, որ այժմ չիք ուրեք և յորում կը պատմուէր այսպէս. Յետ նուաճելոյ Նոյի ի Հայս և ելանելոյ ի ցամաք՝ մին յորդւոց նորա Սիմ գնաց յարևմուտս հիւսիսոյ դիտել երկիրը, և պատահելով փոքր դաշտի առ երկայնանիստ լերամբ, ուր և գետեր (Եփրատ, Տիգրիս) հոսելով կ'երթային դէպ յԱսորեստան՝ կը կենայ հոն երկամսեայ ժամանակ և կոչելով զլեառնն յանուն իւր Սիմ՝ կ'դառնայ յարև-

ւելս Հարաւոյ ուստի եկած էր.—«Պատմեցից ձեզ, ասէ (Ողոմպիոդորոս), զբոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալ, զոր և բազումք ի գեղջկաց զրուցեն մինչև ցայժմ։ Մատեան լեալ զՔսիսութրեայ և զորդւոց նորա, որ այժմ ոչ ուրեք երևի. յորում ասեն կարգ լեալ բանից այսպիսի. Յետ նաւելոյ Քսիսութրեայ ի Հայս և դիմելոյ ցամաքի՝ գնալ, ասէ, մի յորդւոց նորա կոչեցեալն Սիմ ընդ արևմուտս հիւսիսոյ դիտել զերկիրն, և դիպեալ դաշտի միում փոքու առ երկայնանստիւ միով լերամբ, գետոց ընդ մէջ նորա անցանելով ի կողմանս Ասորեստանի՝ դադարէ առ գետովն երկլուսնեայ աւուրս, և անուանէ յանուն իւր զլեառն Սիմ և դառնայ անդրէն յարևելս հարաւոյ ուստի եկն»։ Թէ այսպիսի աւանդութեանց հիմա ինչ հաւատք կրնայ ընծայուիլ յայտնի է։ Նոյն ինքն Խորենացին չկամի լինել երաշխաւոր ստուգութեան այսր աւանդութեան.—«Եւ այսոքիկ զրոյցք, ասէ, սուտ և կամ թէ արդարև լեալք՝ մեզ չէ ինչ փոյթ»։ Ի յետին ժամանակս Սիմ սկսաւ կոչուիլ Սասուն, բայց թէ երբ և ընդէր՝ չէ յայտ։ Եթէ պարտ է հաւատալ Ղաստիվերտցւոյն, որ է մատենագիր ԺԱ. դարուն՝ Սասուն անունն ևս կոչուած է յանուն Սանասարայ.—«Իջին զօրքն ի լեռնէն Սիմն կոչեցեալ, զոր մարդկան (բնակչաց) սովորութիւնք Սանասուն (Սասուն) ասեն, ըստ անուան նախնւոյն իւրեանց» (Լաստ. գլ. ԻԱ.)։

Ի պատմութեան որդւոց Սենեքերիմայ ըստ մեզ ճշմարիտ է միայն գալուստ նոցա ի Հայս և Արծրունեաց սերելն ի նոցանէ. այլն ամենայն անստոյգ և անհիմն է։

**34.** Խորենացին ի ԻԲ. գլուխ Ա. գրոցն, յետ յիշելոյ զՊարոյր իբրև առաջին թագաւոր Հայոց առ Վարբակաւ՝ առ յաջորդաւ նորա Հրաչէիւ կը պատմէ Բագրատունեաց ծագումը Հրէից գերութենէն Շամբաթ անուն ումեմնէ, զոր, ինչպէս տեսանք էջ 113՝ որպէս թէ Հրաչեայ խնդրելով ի Նաբուգոդոնոսորայ՝ առ և բնակեցոյց պատուով։ Սակայն զԲագրատունիս Հրեայ գաղթականութենէ մը սերեալ կարծելոյ հաստատուն պատճառ չունինք։ Բուզանդ և Ագաթանգեղոս կը յիշեն զԲագրատունիս «ասպետութեան իշխան» անուամբ.—«Ամենեցուն միաբանութեամբ, եպիսկոպոսացն և թագաւորին և աշխարհախորհ ձուլիւք հաւանութեամբ ի միասին, արձակեցան և գնացին Հայք մեծ իշխանն մարդպետութեան, և Բագարատ մեծ *իշխանն ասպետութեան*» (Բուզ. Դ. Դ.)։ Ագաթանգեղոս ի վերայ ասպետութեան կը յաւելու նաև թագակապ բառը.—«Իսկ թագաւորն (Տրդատ) վաղվաղակի գումարեաց գլխաւորս նախարարացն, առաջին՝ զիշխանն Անգեղ տան . . . չոր-

քորդ՝ զիշխանն Թագակապ իշխանութեանն ասպետութեան» (Ագաթ. ՃԺԲ.)։ Գիտենք արդարև թէ Բագրատունիք կը կրէին ասպետ տիտղոսը և էին Թագադիր, գէթ առ Հեթանոս Թագաւորօք. շատ անգամ վարած են նաև սպարապետութիւնը։ Ըստ Խորենացւոյն Բագրատունիք այս իշխանութիւններն առին ի Վաղարշակայ։ Ցետ սանձելոյ զՄակեդոնացիս, ասէ Խորենացին, երբ պատերազմները դադրեցան՝ քաջ Պարթեւն (Վաղարշակ) սկսաւ բարեգործութեան։ Նախ փոխարէն ծառայութեանց զօրաւոր և իմաստուն Հրէին Բագարատայ Շամբայ, տուաւ նմա իշխանութիւն՝ ազգաւ Թագադիր լինել Արշակունեաց, և բոլոր տոհմին արտօնութիւն՝ Բագրատունի կոչուիլ յանուն նորա, և այժմ իսկ մեծ նախարարութիւն են Բագրատունիք յազգի մերում։ Քանզի այս Բագարատ է սկզբան նուէրեց զանձն ինքնակամ ի ծառայութիւն Վաղարշակայ. . . ։ Վաղարշակ տուաւ Բագարատայ նաև Հայաստանի արևմտեան սահմանին կուսակալութիւնը.—«Ցետ սանձահարելոյ զՄակեդոնացիս և դադարելոյ պատերազմացն՝ սկիզբն առնէ բարեգործութեանց Պարթեւն քաջ (Վաղարշակ). նախ և առաջին փոխարէն բարեաց հատուցանելով առնն զօրաւորի և իմաստնոյ, որ ի Հրէից Շամբայ Բագարատ. տայ նմա իշխանութիւն՝ ազգաւ Թագադիր լինել Արշակունեաց և որ ի նմանէ ծնեալ ազգ՝ լինել յանուն նորա կոչմամբ Բագրատունի, որ և այժմ մեծ նախարարութիւն է ի մէջ աշխարհիս։ Քանզի այս Բագարատ նախաձեռն ընծայ մատոյց զինքն Վաղարշակայ . . . ։ Իսկ ի ծայրս հայերէն խօսից (կացոյց զնա) կողմնակալ իշխան բիւրուց և հազարաց յարևմտից կուսէ» (Խոր. Բ. Գ.)։ Աւելի մանր կը պատմէ զայս Խորենացին յէ. գլուխ նոյն գրոցն.— Բագարատ կոչուած Հրէին, ի շնորհակալութիւն անձնատուր ձեռընտուութեան նորա առ Թագաւորն, ինչպէս նաև ի վարձ անկեղծութեան և քաջութեան նորա՝ տուաւ տանուտէրութեան պատիւ, նմա և ազգատոհմին, ինչպէս պատմեցինք յառաջագոյն, նաև իշխանութիւն Թագաւորին գլուխը Թագ դնել և կոչիլ Թագադիր և ասպետ և առանց ոսկւոյ և ականց, երեք կարգ մանր մարգարտէ խոյրը դնել ի շրջելն յարքունիս և առ Թագաւորին։ «Եւ զկոչեցեալն Բագարատ որ ի Հրէից, ի շնորհակալութեան նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռնտուութեան առ Թագաւորն և միամտութեանն և քաջութեանն՝ զյառաջասացեալ տանուտէրականն պատիւն ազգին պարգեւէ, և իշխել նմա Թագ ի գլուխ դնել Թագաւորին, և կոչել Թագադիր և ասպետ, և առանց ոսկւոյ և ականց զկրասեր մարգարտով երեքտակէն վարսակալ ածել՝ յորժամ յարքունիս և ի տան Թագաւորին շրջիցի»։ Առ Վաղար-

շական կամ յառաջ քան զՎաղարշակ, զիարդ և իցէ՝ ունէին Բագրատունիք այս հին ցեղային արտօնութիւնները։ Այժմ, ինչպէս տեսանք՝ վկայ են մեր նախնի մատենագիրք, հնագոյնք քան զԽորենացին։ Բայց յառաջ քան զԽորենացին ի պատմութեան մերում ոչ ուրեք յիշուած կը գտնենք, թէ Բագրատունիք ծագմամբ հրեայ էին։ Կ՚երևի սակայն թէ կար աւանդութիւն, թէ Բագրատունիք, ինչպէս նաև Գնթունիք՝ ի բնէ «Պաղեստինացի» էին։ Բայց որպէս տեսաք ի վեր անդ էջ 166, Զօրայ Գնթունի կը հերքէր այս աւանդութիւնն իբրև «վաղնջուց զրոյց և պառաւեալ առասպել»։ Նոյն իսկ Խորենացին կը վկայէ, թէ կային որ զԲագրատունիս կը համարէին բնիկ հայ։ Ոմանք, ասէ, որ չեն արժանահաւատ, զԲագրատունիս ի Հայկայ կը համարին. բայց դու մի հաւատար այսպիսի յիմար բանից, որ ամենևին ճշմարտութեան նշան չունին.—«Ասեն ոմանք յանհաւաստի մարդոց, ըստ յօժարութեան և ոչ ըստ ճշմարտութեան, ի Հայկայ զԹագադիր ազգդ լինել Բագրատունեաց. վասն որոյ ասեմ. մի այսպիսեաց յիմար բանից հաւանիր, զի և ոչ մի շաւիղ կամ ցուցումն գոյ նմանութեան յասացեալսդ՝ որ զարդարութիւն ակնարկէ» (Խոր. Ա. ԻԲ.)։

Զօրաւորագոյն փաստ Խորենացւոյն ի հաստատութիւն հրէութեան Բագրատունեաց են անուանք նոցա, զորս կը ջանայ մեր պատմագրան պատմիչը մերձեցուցանել եբրայեցերէն անուանց։ Գիտասջիր, ասէ, զի անունդ Սմբատ զոր Բագրատունիք յաճախ կուտան պատանեաց իւրեանց՝ Շամբաթն է ըստ հին եբրայական լեզուին.—«Բայց ծանիր զՍմբատդ անուն զոր յաճախ Բագրատունիք ի վերայ պատանեաց կոչեն՝ ճշմարիտ Շամբաթ է ըստ նախնի իւրեանց խօսիցն՝ որ է եբրայեցի» (Խոր. Ա. ԻԲ.)։ Խորենացին որ հոս Սմբատը Շամբաթին հետ կը նոյնացնէ՝ ուրիշ տեղ *խժական* կը կոչէ այն անունը.—«Բայց գիտասջիր զի Բագրատունիք յետ թողլոյ զօրէնս հարց իւրեանց՝ խժական անուններ առին, որպէս Բիւրատ, Սմբատ և ուրիշ անուններ, և զրկուեցան ի նախնի անուանց իւրեանց, զորս յառաջ քան զուրանալն զհրէութիւն ունէին, ինչպէս Բագադիա, Տուբիա, Սեննեքիա, Ասուդ, Սափատիա, Վազարիա, Ենանոս։ Եւ ինձ թուի թէ Բագրատունեաց այժմու անուանք, Բագարատ՝ Բագադիա է, Աշոտ՝ Ասուդ, Վարազ՝ Վազարիա, որպէս և Սմբատ՝ Շամբաթ.—«Բայց գիտեա, զի ի թողուլ ազգին Բագրատունեաց զօրէնս հարցն՝ նախ խժական ժառանգեցին յորջորջումն, Բիւրատ և Սմբատ և այլ այսպիսի կոչմունս, զրկեալ ի նախնական անուանցն, որպէս կոչէին յառաջ քան զուրանալն—Բագադիա, Տուբիա, Սեննեքիա, Ասուդ, Սափատիա, Վազարիա, Ենանոս։ Եւ ինձ թուի

թէ որ այժմ կոչին Բագրատունիք Բագարատ՝ Բագադիա է դա, և Ասուդ՝ Աշոտ, գոյնպէս և Վազարիա՝ Վարազ, որպէս Շամբատ՝ Սմբատ» (Խոր. Բ. կԳ.)։ Բայց Խորենացւոյն այս դիտողութիւնն ուղիղ չէ։ Բագրատունիք այն *խժական* կոչուած անուններն ունէին նաև յառաջ քան զուրանալն զհրէութիւն։ Վաղարշակայ ժամանակի Բագրատունեաց իշխանին անունն, ըստ Խորենացւոյն, Բագարատ էր, իսկ զհրէութիւնը Բագրատունիք, ըստ նմին Խորենացւոյ՝ ուրացան աստ ուրեմն առ Արշամաւ։

Վերոյիշեալ անուններուն գալով՝ ասեմք թէ Շամբաթ, այսինքն Շաբաթ, երբև մարդոյ անուն գործածուած չենք գտներ ոչ ի Հին և ոչ ի Նոր Կտակարանի, և սովորութիւն չէր Հրէից այս և սմին նման կրօնական անուններ մարդոց վրայ կոչել։ Եւ ոչ Բագադիա, Սափատիա, Վազարիա, Սենեքիա, Ասուդ անուններ կան բոլոր Հրէից գրոց մէջ, և ինչպէս կը կարծենք՝ այս անունները եբրայական չեն։ Ընդհակառակն գիտենք, թէ Սմբատ, Բագարատ, Վարազ՝ արիական բառեր են և ոչ թէ հրէական անուանց աղաւաղութիւն։ Սմբատ՝ *սիմ* (արծաթ) և *պատ* (շէն) արիական բառերէն կը բաղկանայ։ Բագարատ նոյնպէս արիական բառ է, և թուի նշանակել աստուածատուր—*բագ* (դիք) և *րրատ* (ետ) բառերէն. իսկ Վարազ, որ Սասանեանց ժամանակ փոխուելով Գերոզ եղած է՝ կը նշանակէ յաղթող, և Պարսից սովորական անուն էր, երբեմն բարդութեանց մէջ ևս կը մտնէր, ինչպէս Վարազատիրոց, Վարազվաղան, Վարազգէն, Վարազդատ։

Եթէ պարտ է հաւատալ Խորենացւոյն՝ Բագրատունիք ծանր հալածումներ կրած են առաջին երեք կամ չորս Արշակունի թագաւորներէն ի պատճառս հրէութեան։ Վաղարշակ, յետ մեծարելոյ զԲագարատ գրեթէ թագաւորական պատուով վասն հաւատարմութեանն, և յանձնելոյ նմա այն մեծ զինուորական իշխանութիւնը, զոր վերագոյն յիշեցաք՝ կ'ստիպէ զնա թողուլ զհրէութիւն և պաշտել զկուռս։ Յետ այսպիսի գործոց, ասէ Խորենացին (գիրք Բ. գլ. Ը.), Վաղարշակ մեհեան շինելով յԱրմաւիր և անդրիս կանգնելով ի պատիւ արեգական և լուսնի և իւրոց նախնեաց՝ թախանձանօք կ'ստիպէ զԲագարատ, թագադիր ասպետ, թողուլ զհրէութիւն և պաշտել զկուռս. և տեսնելով թէ Բագարատ չառնուր յանձն՝ կը թողու զնա ըստ կամաց.—«Իսկ յետ այսր ամենայնի մեհեան շինեալ (Վաղարշակայ) յԱրմաւիր, անդրիս հաստատէ արեգական և լուսնի և իւրոց նախնեաց. և աղերսեալ որ ի Հրէիցն Շամբայ Բագարատ, որ և թագադիր ասպետ, հանդերձ հարկեցուցանող բանիւք, թողուլ զօրէնս հրէութեան և պաշտել զմե-

հեանս. զոր չառեալ յանձն (Բագարատայ)՝ ըստ կամաց թողու զնա արքայն Վաղարշակ»: Առ Արշակաւ յաջորդաւ Վաղարշակայ, թախանձանքն փոխին ի բռնութիւն: Արշակ, ասէ, բռնադատեց զորդիս Բագարատայ պաշտել զկուռս. երկուք սրով նահատակեցան քաջութեամբ ի վերայ հայրենի օրինաց, արդարև հետևելով Անանիանց և Եղիազարեանց: Մնացեալքն յանձն առին շաբաթ օրը ձի հեծնել և յորս և ի պատերազմ երթալ, նաև թողուլ անթլփատ զմանկունս իւրեանց. և որովհետև անկին էին՝ Արշակ պատուիրեց բոլոր նախարարութեանց կին չտալ նոցա, եթէ ոչ ուխտիւ խոստանային թողուլ զթլփատութիւն: Բագրատունիք յանձն առին զերկուս զայսոսիկ—շաբաթը չպահել և թլփատութիւնը թողուլ, միայն կուռք պաշտել չառին յանձն: «Ի սմանէ (յԱրշակայ) նեղեալ որդիք Բագարատայ վասն զկուռս պաշտելոյ, երկու ի նոցանէ սրով կատարեցան արիաբար ի վերայ հայրենի օրինացն, զորս ոչ պատկառեմ ասել հետևող լինել Անանիանցն և Եղիազարանց: Բայց այլքն յանձն առնուն այսչափ միայն,—ի շաբաթու հեծանել յորս և ի պատերազմունս, և զմանկունս թողուլ անթլփատս յորժամ լինիցին, քանզի անկին էին. և հրամայեցաւ յԱրշակայ մի տալ նոցա կանայս յամենայն նախարարութեանցն՝ եթէ ոչ ուխտ պայմանի հաստատեսցեն թողուլ զթլփատութիւնն: Զորս յանձն առնուն զերկուս զայս միայն, այլ ոչ զերկրպագութիւն կռոցն» (Խոր. Բ. Թ.):

Նոյն բռնութիւնը կը կրկնուի առ Տիգրանաւ: Տիգրան, ըստ Խորենացւոյն, մեհեան շինելով և բագիններ կանգնելով՝ բոլոր նախարարաց հրամայեց զոհ մատուցանել երկրպագութեամբ, և որովհետև չառին յանձն Բագրատունիք՝ Տիգրան կտրել տուաւ զլեզու միոյն որոյ անունն էր Ասուդ, վասն անարգելոյ նորա զկուռս, և ուրիշ տանջանք չտուաւ, քանզի այլք յանձն առին ուտել զոհեալ և խոզենի, թէպէտ ինքեանք չզոհեցին երկրպագութեամբ: Ուստի Տիգրան առաւ ի նոցանէ ասպարապետութիւնը, թագադիր ասպետութիւնը միայն թողուց.—«Մեհեանս շինեալ Տիգրանայ և առաջի մեհենիցն բագինս կանգնեալ՝ զոհս ամենայն նախարարացն հրամայէ մատուցանել հանդերձ երկրպագութեամբ. զոր չառեալ յանձն ազգն Բագրատունեաց՝ զմիոյ զլեզուն հատեալ որում անուն էր Ասուդ, վասն պատկերացն անարգութեան, և ոչ այլ ինչ խոշտանգէ. քանզի յանձն առին ուտել ի զոհիցն և զմիս խոզի, թէպէտև ոչ ինքեանք զոհեցին երկրպագութեամբ. վասն որոյ առնու ի նոցանէ զիշխանութիւն զօրուն, բայց միայն զթագադիր իշխանութիւնն ոչ հանէ» (Խոր. Բ. ԺԵ.):

Եւ Արշամաւ կրեց թագադիր ազգն Բագրատունեաց, ըստ

Խորենացւոյն, վերջին և խստագոյն հալածումը, որ և վերջացաւ ի սպառ ուրացութեամբ նոցա։ Զայնու ժամանակաւ, ասէ Խորենացին, Արշամ բարկացաւ յոյժ թագակապ ասպետին իւրում Ենանոսի, որ արձակած էր զՀիւրկանոս քահանայապետ Հրէից, զոր գերի բերած էր Բարզափրան Ռշտունի առ Տիգրանաւ . . . ։ Արշամ գրգռուելով նաև ի բանից Զօրայի Գնթունւոյ, որ ամբաստանած էր զԵնանոս իբրև մէտ յապստամբութիւն՝ հրամայեց, ասէ, պէսպէս տանջանս կուտել ի վերայ Ենանոսի, ստիպելով թողուլ իսպառ զհրէութիւն, երկրպագել արեգական և պաշտել թագաւորին աստուածներն առ ընդունել զառաջին իշխանութիւն իւր, և կամ կախուել զփայտէ և ջնջուիլ ազգովին։ Ասպետին ազգականներէն մին, Սարիա անուն, սպանաւ առաջի նորա, յետոյ երկու որդիքը՝ Սափատիա և Ազարիա, բերուեցան ի տեղին սպանման։ Որդւոցը սպանման երկիւղէն և ի թախանձելոյ կանանց իւրոց կատարեց Ենանոս թագաւորին կամքը բոլոր ազգատոհմիւ, և հաստատուեցաւ յառաջին պատիւ իւր.—«Զայսու ժամանակաւ եղև մեծ ցասումն Արշամայ ի վերայ Ենանոսի ասպետի ուրումն թագակապի, քանզի նա արձակեաց զՀիւրկանոս Հրէից քահանայապետ, զոր գերեալ էր Բարզափրանայ Ռշտունւոյ յաւուրս Տիգրանայ . . . ։ Քսութիւն զնմանէ (զԵնանոսէ) մատուցանէ արքայի և Զօրա նահապետ ազգին Գընթունեաց, ասելով. Գիտեա, արքայ, զի ապստամբել ի քէն կամեցաւ Ենանոս . . . ։ Այս քսութեանցս հաւատայ Արշամ. հրամայեաց տանջանս պէսպէս ի վերայ Ենանոսի կուտել. և վախճան գործոյն՝ կամ թողուլ իսպառ զօրէնս հրէութեան և երկիր պագանել արեգական և պաշտել զկուռս արքայի, ընդ որով հարկեալ արքայ տացէ նմա զնոյն իշխանութիւնն, կամ կախել զփայտէ և բնաջինջ լինել ազգի գորա։ Եւ սպանեալ մի յազգականացն առաջի նորա, որում անուն էր Սարիայ, և առընթեր զորդիսն մատուցեալ ի տեղի սպանմանն, որոց անուանքն Սափատիայ և Ազարիայ, յերկիւղէ մահուան որդւոցն և ի թախանձելոյ կանանցն կատարէ զկամս արքայի հանդերձ ամենայն ազգատոհմիւն և յառաջին պատիւն իւր հաստատի» (Խոր. Բ. ԻԴ.)։

Ըստ Բուզանդայ և ըստ նմին իսկ Խորենացւոյն՝ յԱրտաշատ, յԵրուանդաշատ, ի Վան, ի Նախճաւան և յայլ քաղաքս տեղիս ի Հայս ոչ սակաւ Հրեայք կային, յորոց քաղուածք մնացին հրէական օրինօք նաև յետ քրիստոնէութեան (Բուզ. Դ. ԾԵ. Խոր Գ. ԼԵ.), և ամենևին յիշուած չէ, թէ առ քրիստոնէութեամբ կամ յառաջ քան զքրիստոնէութիւնն հրեայ մը տանջուեցաւ կամ սպանուեցաւ երբէք վասն հաւատոյ։ Այն է մանաւանդ զարմանալին, զի այս

Հրեաներն Հայաստան բերողն էր Տիգրան մեծ։ Տիգրան հրեաներ կը բերէ իւր երկիրը, քաղաքներ կուտայ նոցա բնակել, և կը թողու զնոսա իւրեանց հայրենի օրինօք. իսկ իւր թագադիր ասպետներն հաւատոյ համար կը տանջէ և կ'սպաննէ, նոյնպէս այլ թագաւորք յառաջ քան զնա և յետ նորա։ Եթէ այսչափ ատելի էր նոցա հրէութիւնն, ընդէր հրեայ ցեղի մը նահապետին տուին այնպիսի բարձր իշխանութիւններ, որպիսի էին թագադիր ասպետութիւն և ասպարապետութիւն։ Զարմանալի է նաև, զի Բագրատունիք կը թողուն շաբաթը և թլփատութիւնը, կ'ուտեն զահեալ և խոզենի և տակաւին հրեայ են։ Կռապաշտութեան հաւատար էր այս Հրէից համար, ինչպէս յայտնի է ի պատմութենէն Մակաբայեցւոց։ Եօթն եղբարք սպանուեցան, վասն զի յանձն չառին խոզի միս ուտել։ Բոլորովին անիմաստ է նաև այն խօսքը, թէ Արշակ հրամայեց բոլոր նախարարութեանց չտալ զդստերս իւրեանց Բագրատունեաց որ անկին էին, որպէս թէ Բագրատունիք պիտի չկրնային ամուսնանալ առանց խնամութեան այլոց ցեղից. միթէ աղջիկ չկա՞ր Բագրատունեաց մէջ. արդէ միայն կը ծնանէր այս ցեղը։ Վերջապէս, Բագրատունեաց հալածանաց պատմութիւնը պարտ է դասել ի կարգ այն վկայաբանութեանց, որ հոգևոր վէպ (րոման) են։ Խորենացին կը գրէ զիւր պատմութիւն ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, և այնպիսի ժամանակ մինչ Հայք ի հալածանս էին կամ կը կարծէին լինել, և փոքր թուլութիւն մը ի հաւատոյս կը համարուէր ուրացութիւն։ Խորենացին առիթ առնլով այն աւանդութենէն, թէ Բագրատունիք պաղեստինացի կամ հրեայ էին (տես էջ 172), ի շնորհս իւրոյ Մեկենասայ ոյժ կու տայ այն աւանդութեան, զնախնիս Սահակայ ցուցնելով ոչ միայն սերունդ Աբրահամու և աստուածապաշտ, այլ և քաջ ախոյեան հաւատոյ յարքունիս հեթանոս թագաւորաց, իբրև զԴանիէլն և զերիս մանկունսն, և այս ի գովեստ և ի քաջալերութիւն Սահակայ։ Ուրիշ այսպիսի միջոցներ գործածուած են այն դարուն մէջ ի Հայս, որպէս տեսցուք յիւրում տեղւոջ։ Խորենացին այնպէս պաշարեալ էր Բագրատունեաց հրէութեան գաղափարաւ՝ զի ուր և երևելի հրեայ մը կը գտնէ պատմութեան մէջ՝ կը համարի Բագրատունի։ Զորօրինակ, զեգեսացի հրեայն Տուբի անուն, յորոյ ի տան պատմի թէ ագաւ Թադէոս առաքեալ ի գալն բժշկել զԱբգար ըստ աւանդութեան իւրեք՝ Խորենացին Բագրատունի կ'անուանէ.—«Եկեալ (Թադէի) եմուտ ի տուն Տուբիայի իշխանի հրէի, զորմէ ասեն լինել յազգէն Բագրատունեաց» (Խոր. Բ. ԼԳ.)։

Առանց ժամանակակից յարգի վկայութեան կամ ուրիշ անժխտ-

ակլի ապացոյց տեսնելու չենք կրնար իբրև պատմութիւն ընդունել վերոյիշեալ վկայաբանութիւնը։ Ընդհակառակն, Բագրատունեաց պաշտօնը, և անուանք նոցա որ արիական են՝ բաւական են ցուցնել, թէ Բագրատունիք ի բնէ Հայ էին, որպէս և կը պնդէին իսկ ժամանք առ Խորենացւով, և թէ հին Արտաքատեան թագաւորութեան ժամանակէն ունէին նոքա զթագաւորս պսակելու պաշտօնութիւնը։ Արդարև Բագրատունեաց թագադիր իշխանութիւնն այնպէս կապուած էր Արշակունեաց թագին հետ, զի զոր օրինակ չէր օրէն բաց յԱրշակունեաց յայլմէ ցեղէ թագաւոր դնել (էջ 84)՝ նոյնպէս չէր օրէն Արշակունւոյ մը թագաւորել առանց պսակելոյ թագադիր ասպետէ մը, այն է ի Բագրատունեաց։ Թէպէտ մեր պատմութեան մէջ յայտնի յիշուած չէ, թէ ամէն Արշակունի թագաւոր կը պսակուէր թագադիր ասպետէ մը՝ կան սակայն ակնարկութիւններ, որ կը ցուցնեն թէ օրինաւորութեան համար հարկ էր թագաւորաց պսակիլ ի Բագրատունեաց։ Խորենացին ի պատմելն զթագաւորել Երուանդայ խորամանկութեամբ ի ձեռն կաշառակուրծ նախարարաց՝ ասէ. «Եւ ի մեռանել Սանատրկոյ, միաբանեալ (այն նախարարաց) թագաւորեցուցին զնա, առանց արանց յազգէ Բագրատունեաց լինել թագադիր» (Խոր. Բ. Լէ.)։ Իսկ զյաջորդէ նորա զԱրտաշիսէ ասէ. «Յետ մահուանն Երուանդայ մտեալ Սմբատայ (Բագրատունւոյ) զարքունականսն յուզէր զգանձսն, և գտեալ զթագն Սանատրկոյ արքայի՝ դնէ ի գլուխն Արտաշիսի և թագաւորեցուցանէ ի վերայ ամենայն երկրիս Հայոց» (Խոր. Բ. Խէ.)։ Օրինաւոր թագաւոր համարուելու համար Բագրատունի իշխանէ մը պսակուելու օրէնքը կ՚ակնարկուի նաև այն խօսքէն, զոր Խորենացին կը դնէ ի բերան Սմբատայ Բագրատունւոյ, երբ Սմբատ հրաշէկ շամփուրը բոլորելով պսակաձև դրաւ ի գլուխ Մերուժանայ, ասելով հեգնօրէն. «Պսակեմ զքեզ, Մերուժան, քանզի ի խնդիր էիր թագաւորել ի վերայ Հայոց, և ինձ ասպետիս պարտ է զքեզ պսակել ըստ սովորական իշխանութեան իմոց հայրենեաց» (Խոր. Գ. Լէ.)։

Խորենացին, որ յառաջ քան զՎաղարշակ ամենայն ինչ «խառն ի խուռն և վայրենի» կը համարի ի Հայս՝ ի մէջ այլ կարգաց նաև թագադիր ասպետութիւնը կու տայ հաստատել նմին Վաղարշակայ.— «Նախ և առաջին օրինադրէ թագաւորն զինքն և զտուն իւր, սկիզբն առնելով ի գլխոյն իւրմէ և ի թագէն»։ Եւ Բագարատայ տայ իշխանութիւն «թագ ի գլուխ դնել թագաւորին և կոչել թագադիր և ասպետ» (Խոր. Բ. Է.)։ Արշակունի թագաւորաց պսակուիլն ի Բագրատունեաց, ինչպէս տեսանք՝ գրեթէ վաւերացնել էր

թագաւորին ընտրութիւնը և տեսակ մը սեղմում թագաւորական իշխանութեան. ուստի Վաղարշակայ այսպիսի սեղմում մը ինքնակամ յանձն առնուլ հաւանական չէ։ Ըստ մեզ թագաւոր պսակելն առ Հայս ոչ միայն վաղեմի սովորութիւն էր, որպէս ասացաք, հին Արարատեան թագաւորութեան ժամանակէն, այլև թերևս կրօնական արարողութիւն, և Բագրատունիք իբրև զՎահունիս էին թերևս քրմական ցեղ ի մէջ Հայոց։ Առ այս արդարև չունինք պատմական ապացոյց, բայց այսպէս ենթադրելու բաւական պատճառ կու տայ մեզ Բագրատունի անուան առաջին բառը ԲԱԳ, որ հնդեւրոպական լեզուաց շատերուն մէջ կայ և կը նշանակէ գէք կամ աստուած։ Ուստի մարթ է կարծել, թէ Բագրատունիք այսպէս կոչուած էին իբր նուիրական անձինք որպէս զՎահունիս, որ քուրմ էին ցեղով և որոց անուան առաջին բառը ՎԱՀ՝ բագ բառին ուրիշ ձևն է և միևնոյն նշանակութիւնն ունի։

Զթագաւորս պսակելու սովորութիւնն ի ձեռն Բագրատունեաց դադրած կը գտնենք առ քրիստոնեայ թագաւորօք։ Վերջին թագադրութիւնը որ կ՚յիշուի ի պատմութեան մերում՝ է թագադրութիւնն Աշխէն տիկնոջ, հաւանականապէս ի ձեռն Սմբատայ ասպետի, ինչպէս կ՚երևի, յառաջ քան զդարձն Տրդատայ։ Տրդատ, ասէ Խորենացին, գալով ի Հայս՝ յղեց զՍմբատ ասպետ, Բագարատայ հայրը, բերել զօրիորդն Աշխէն, զդուստր Աշխադարայ ի կնութիւն, և հրամայեց գրել զնա Արշակունի, ագուցանել նմա ծիրանի և թագ կապել.—«Եկեալ Տրդատայ յաշխարհս՝ առաքէ զՍմբատ ասպետ, զհայր Բագարատայ, ածել զկոյսն Աշխէն, դուստր Աշխադարայ իւր ի կնութիւն։ Եւ հրամայէ գրել զնա Արշակունի և զգեցուցանել ծիրանիս և թագ կապել» (Խոր. Բ. ՁԳ.)։ Յետ դարձին Տրդատայ, առ յաջորդօք նորա, Բագրատունիներէն պսակուած թագաւոր ամենևին յիշուած չէ, ո՛չ առ Բուզանդայ և ո՛չ առ Խորենացւոյն, այնպէս որ այն սովորութիւնը բոլորովին դադրած կ՚երևի առ քրիստոնէութեամբ։ Պատճառ այս դադարման թերևս այն էր, զի այն սովորութիւնն իբրև հեթանոսական արարողութիւն ճանչցուած էր յազգին։

Մեր այս դիտողութիւնն զթագադիր իշխանութենէ Բագրատունեաց, թէև ենթադրութիւն՝ ունի սակայն խորին պատմական նշանակութիւն մը։ Ինչպէս առ Եբրայեցիս՝ նոյնպէս առ Եգիպտացիս և առ արիական ազգս (Զենտ. Բ.), իշխանութիւնն ի սկզբան աստուածպետական էր, այսինքն քուրմք կամ մարգարէք էին միանգամայն աշխարհական իշխանք։ Երբ աշխարհական իշխանութիւնն առնուեցաւ ի կրօնականաց՝ այս վերջինք ինքեանց պահեցին զթա-

գաւառս պսակելու կամ օծելու արտօնութիւնը։ Այսպէս երբ Հրեայք խնդրեցին թագաւոր՝ վերջին մարգարէ իշխան նոցա Սամուէլ օծեց զՍաւուղ, դառաջին թագաւոր Հրէից, և ապա զԴաւիթ յաջորդ նորա։ Առ Բակտրիացիս և առ Մարս կար զթագաւորս պսակելու սովորութիւն։ Պարթևաց թագաւորք, որ էին ի տոհմէ թագաւորաց Պարսից՝ ունէին յատուկ թագադիր իշխաններ։ (Ամմ. Մարկեղ. ԻԴ. 3, Լ. 12)։

**35.** Խորենացին «զանխորհուրդ» ապստամբութիւն Հայկակայ, Զարմայրի երթն ի պատերազմն Տրովայ, ինչպէս նաև Սենեքերիմայ որդւոց գալուստն առ Սկայորդւով և զԲագրատունեացն առ Հրաչէիւ՝ իբրև միջանկեալ դէպք կը յիշէ, առնլով, որպէս ասէ՝ «ի բանից արանց իմաստնոց և առ այսոսիկ քաջախոհակաց», քանզի աղբիւր նորա Մար Իբաս, յետ յիշելոյ (գիրք Ա. գլ. Ի.) զմահ Արայեանն Արայի «ընդ Շամիրամայ ի պատերազմի», (Շամիրամայ դէմ, թէ վասն Շամիրամայ—չէ յայտ), համառօտիւ խօսելով զորդւոյ նորա զԱնուշաւանայ՝ կու գայ ի պատմութիւն Պարուրայ, լռութեամբ անցնելով, որպէս ասացաք այլուր, զհարիւրամեան միջոցաւ, յԱնուշաւանայ մինչև ցՊարոյր։ Բայց յիշատակութիւն Խորենացւոյն զԱնուշաւանայ (տես էջ 110. 17.), համառօտ արգարև կարևոր է սակայն ըստ մեզ, քանզի յայտնի է թէ հին աւանդութենէ, թերևս ազգային երգէ մը կու գայ։ Խորենացին զԱնուշաւան, յետ մահուան հօր իւրոյ Արայեան Արայի առ Նինուասաւ, «տուայտել» կու տայ «ի դրան արքունի բաւական ժամանակս», մինչև բարեկամաց օգնութեամբ առնուլ նախ միոյ մասին Հայաստանի, և ապա բոլորին վերակացութիւնը «հարկահանութեամբ», այսինքն իբրև հարկատու իշխան։ Այսպէս, ըստ Խորենացւոյն, յԱնուշաւանայ սկսեալ մինչև ի Պարոյր, իբր հազար տարի, Հայք են հարկատու իշխանութիւն Ասորեստանեայց։ ԶՀայս առ Ասորեստանեօք, ի Նինուասայ մինչև ի սպառ բարձումն տէրութեան Ասորեստանի, դնել հարկատու այն տէրութեան՝ մակաբերութիւն է մանաւանդ քան ստոյգ պատմութիւն։ Ասորեստանի թագաւորաց ընդարձակ աշխարհակալութեան նայելով՝ կրնայ արդարև կարծուիլ, թէ Հայք ևս նուաճեցան ընդ իշխանութեամբ նոցա. բայց ինչպէս արդէն տեսանք էջ 38—40՝ առ այս ոչ միայն պատմական ապացոյց չունինք, այլ ընդհակառակն կան ստոյգ պատմական ակնարկութիւններ, որ բաւական են կարծեցնել, թէ Հայք, կամ «երկիրն Արարատայ», չեղև կանոնաւոր հարկատու իշխանութիւն առ Ասորեստանեօք։

Թէ Անուշաւան էր արդարև որդի Արայեան Արայի, և թէ

եզև Հարկատու իշխան կամ ոչ՝ այս չէ ըստ մեզ ի պատմութեան Անուշաւանայ կարևորագոյն կէտ, և չկարէ ընդունուիլ իբրև ստուգիւ պատմական։ Կարևորագոյն և պատմական կէտ յառացեալսն զԱնուշաւանայ է մանաւանդ Սօս անունն, որ ի կրօնական արարողութենէ իմեքէ յառաջ եկած կը պատմուի, այն է ի լինելոյ նորա նուիրեալ ի սօսին Արմաւրի, որ էր հին կրօնական կամ քրմական քաղաք Հայոց (Խոր. Բ. Ը. և ԺԲ.), ինչպէս նաև այն սօսեաց լինելն «ի Հմայս», այսինքն պատգամատեղի բազում ժամանակս։ Արմաւրի սօսիներն արդարև կը յիշեցունեն Դոդոնայի «պատգամատու կաղնին,» quercum fatidicum, որոյ տերևներուն շարժմանէն հմայութիւնք լինէին առ նախնի Պեղասգացիս Եպիռոսի, որպէս առ հինսն Հայոց՝ յԱրմաւիր։ Չենք գիտեր, թէ ինչպէս Խորենացին զplatanum armeniacum Հռոմայեցւոց, այն է արմենական կամ հայական սօսին, սխալմամբ կը թարգմանէ Արմենակայ սօսի։

**36**. Մինչև սկսեալ յիշել զպատմութիւն Մար Իբասայ զՊարուրէ կամ զկործանմանէ տէրութեան Ասորեստանի ի ձեռն Վարբակայ Մարի ըստ Կտեսեայ՝ հարկ կը համարինք ցուցնել Խորենացւոյն ժամանակագրական սխալը, որով շատ անձանց և դիպաց թուականներն կը շփոթէ ընդ միմեանս։ Գիտենք թէ Ասորեստանեայց պետութիւնն անց ի Քաղդէացիս ի վերջ կոյս Է. դարուն (625) ն. ք. զՔր.։ Արդէն տեսանք, (էջ 33. 11.), թէ ինչպէս ժամանակակից պատմութիւնն Հրէից, թէպէտ ոչ յայտնապէս սակայն լռելեայն, զբարձումն տէրութեան Ասորեստանեայց առմամբ Նինուէի կ'ակնարկէ լեալ գրեթէ զայնու ժամանակաւ, այն է ի սկզբան թագաւորութեանն Յովսեայ (639—608), համաձայն յոյն պատմչացն Հերոդոտոսի և Քսենոփոնի, որ զբարձումն զայն կը պատմեն լեալ առ Կիաքսարաւ Ա—ով, իբր 625-ին նախ քան զՔր.։ Բայց Կտեսիաս, այլ պատմիչ յոյն, և ի նմանէ առնլով նաև Դիոդորոս Սիկեղացի, յետ Նինուասայ ոչ սակաւ ծոյլ և մեղկ թագաւորաց անուններ տալով, Ասորեստանեայց պետութիւնը վերջացած կը դնեն առ Սարդանաբաղաւ, իբր 876-ին նախ քան զքրիստոնէական թուականն։ Ըստ բանի սոցա՝ Վարբակէս կուսակալ Մարաց և Բեղեսիս կուսակալ Բաբելոնի միաբանելով կու գան Նինուէի վրայ. քաղաքը կ'առնուն, Սարդանաբաղ կ'այրէ զինք ի պալատան իւրում, և այսպէս Մարք և Բաբելացիք ազատեալ Ասորեստանեայց իշխանութենէն՝ լինին ինքնագլուխ թագաւորութիւնք։ Եւսեբիոս ի Քրոնիկոնին իւրում, ի յիշելն զբարձումն տէրութեան Ասորեստանի՝ կը հետևի Կտեսեայ։ Նաև Խորենացին, որպէս թէ ի Մար Իբասայ, բայց բուն

լեռնեբեայ տանլով, քան զոր այլ աղբիւր չունի՝ կը գնէ զբարձումն տէրութեան Ասորեստանի ըստ Կտեսեայ առ Վարբակաւ, ընդ որում ժամանակակից և գործակից կը պատմէ լինել զՊարոյր ոմն նախարար Հայ զայնու ժամանակաւ։ Արդ՝ ըստ Հաշուոյ Կտեսեայ, թուականն կործանման տէրութեան Ասորեստանի առ Վարբակաւ չէ յետոյ քան զամն 876 նախ քան զՔր. Ահա Կտեսեայ հաշիւը։ Ըստ Կտեսեայ Ասորեստանի տէրութեան սկիզբը հազար ամօք կամ սակաւ ինչ աւելի յառաջ էր քան զՏրովական պատերազմն, այն է իբր 2176-ին նախ քան զՔր. (Պատմ. առ Եւս. Քր. Ա. Հտ.), քանզի թուական Տրովական պատերազմին չանցնիր այսր քան զամն 1176 նախ քան զՔր., իսկ կործանումն Ասորեստանի տէրութեան ի ձեռն Վարբակայ, դարձեալ ըստ Կտեսեայ (Անդ), եղև 1300 ամօք յետոյ քան զհաստատութիւն տէրութեան Ասորեստանի, այսինքն 2176 — 1300=876-ին նախ քան զՔր.։ Արդ, եթէ ըստ Խորենացւոյն Ասորեստանի տէրութեան կործանումը եղաւ առ Վարբակաւ, այն է 876-ին նախ քան զՔր.՝ ապա ոչ Սկայորդին (նախորդ Պարուրայ) կարէր լինել առ որդւովք Սենեքերիմայ, այն է 707-ին նախ քան զՔր., քանզի ի մէջ այս երկուց թուականաց, 876 և 707, իբր 170 տարւոյ միջոց կայ, և ոչ Հրաչէ (յաջորդ Պարուրի) կարէր լինել առ Նաբուգոդոնոսորաւ, քանզի իբր 290 ամաց միջոց կայ ի մէջ 876-ի և 587-ի, որ է թուական Հրէից գերութեան։

Ոմանք զԽորենացին արդարացնելու համար՝ զՊարոյր կը դնեն ոչ առ Վարբակաւ, այլ առ Կիաքսարու Ա-ով, կամ Նինուէի առման ժամանակ, այսինքն 625-ին նախ քան զՔր. և կը կարծեն, թէ այսպէս Սկայորդին լինի ժամանակակից Սենեքերիմայ, և Հրաչեայ՝ Նաբուգոդոնոսորայ։ Բայց այս բանի միաբանութեամբ ոչ թէ կը վերնայ սխալը, այլ նոր անտեղութիւն մը կը ծագի։ Սկայորդւոյն իշխանութեան սկիզբը դնելով 707-ին, որ է ամ փախստեան որդւոց Սենեքերիմայ ի Հայս, և Հրաչէի իշխանութեան վերջը 588-ին, որ է ամ վերջին գերութեան Հրէից՝ ամք իշխանութեան երից թագաւորաց կամ իշխանաց, Սկայորդւոյն, Պարուրի և Հրաչէի, լինին 120. իսկ ամք իշխանութեան յաջորդ եօթն թագաւորաց, այսինքն ի Հրաչեէ մինչև Տիգրան (Տիգրանայ թագաւորութեան սկիզբը դնելով Բաբելոնի առման տարին, որ է 538,)՝ լինին 50։ Ապաքէն հաւանական չէ և ոչ իսկ հաւատալի, թէ երեք անձինք թագաւորեցին 120 տարի, այսինքն իւրաքանչիւր, թէ սակաւ, 40 տարի կարգաւ, իսկ եօթն անձինք 50 տարի, այն է իւրաքանչիւր, թէ աւելի, եօթնական տարի։

Ըստ Կտեսեայ, առմամբ Նինուէի ի ձեռն Վարբակայ, ապա

եղան Մարք և Բաբելացիք։ Մար Իբաս, ըստ Խորենացւոյն, կը պատմէ, թէ Հայք, որ էին ընդ իշխանութեամբ Ասորեստանեայց՝ եկան ազատ թագաւորութիւն։ Որպէս թէ յայնժամու Հարկատու իշխանն Հայոց Պարոյր, օգնելով Վարբակայ՝ իբր վարձ առաւ «թագաւորութեան ձև և շուք»։ Ի բանից Խորենացւոյն դժուարին է հասկնալ, թէ Պարո՞յր օգնեց Վարբակայ բառնալ Ասորեստանի տէրութիւնը, թէ Վարբակ՝ Պարուրի. քանզի Խորենացին, որ զՊարուրէ ասէ, «Ոչ փոքր ինչ օգնականութիւն գտեալ ի Վարբակայ մարէ, բառնալով (եբարձ) զթագաւորութիւնն ի Սարդանաբաղայ» յետոյ ասէ զՎարբակայ, թէ «Յինքն զքաջն մեր նախարար յանկուցանէ զՊարոյր,... և զթագաւորութիւնն ի Սարդանաբաղայ յինքն առեալ, աւրէ Ասորեստանի (Խոր. Ա. ԻԱ.)։

Թողունք զայս հակասութիւն. ինչպէս որ հիմ չունի լինելն Հայոց հարկատու իշխանութիւն առ Ասորեստանեայս (տես էջ 179)՝ նոյնպէս հիմ չունի Պարուրի մը «թագաւորական ձև և շուք» ընդունելն ի Վարբակայ, քանզի Կտեսեայ պատմութիւնն զկործանումն տէրութեան Ասորեստանի ի ձեռն Վարբակայ իբր 876-էն նախ քան զՔր.՝ չէ ամենևին համաձայն Հրէից ժամանակակից պատմութեան, որ այն կործանումը կը դնէ աւելի քան 200 ամօք յետոյ քան զամն 876։ Եւ արդարև ի միջոցի ժամանակին յորում Կտեսիաս բարձեալ կը դնէ զտէրութիւնն Ասորեստանի, այն է 876-էն մինչև 625, որ է թուական բուն կործանման Նինուէի՝ կը գտնենք զտէրութիւնն Ասորեստանի ի կատար մեծութեան հասած առ աշխարհակալ թագաւորօք, որպիսի էին Փուլա, Թագղաթ—փաղասար, Սարդանաբաղ, Սենեքերիմ և այլք։ Սակաւ ինչ յետոյ են քան զամն 876 նաև Հրէից մարգարէք Եսայի, Երեմիա, որ կը յիշեն կամ կ'սպառնան Ասորեստանի տէրութեան անկումը և զկործանումն Նինուէի։ Ոմանք երկիցս առնուած կը դնեն զՆինուէ, մի՝ առ Վարբակաւ (876), և միւս ևս՝ առ Կիաքսարաւ (625)։ Բայց Հրէից մատեանք մի միայն առումն կը ճանչնան Նինուէի, և զայն առ Յովսեաւ կամ ըստ Յունաց՝ առ Կիաքսարաւ (625)։ Նաւումայ մարգարէութիւն կոչուած համառօտ գրոյն հեղինակը, որ թուի լինել ժամանակակից առման Նինուէի առ Կիաքսարաւ, ուստի և յետոյ քան զ876՝ ի վաղուց միշտ յաջողութեան և ի բարգաւաճման գիտէ զՆինուէ մինչև ի ժամանակ իւր.—«Նինուէ ի բազում ժամանակաց հետէ իբրև զաւազան ջուրց . . . բնակութիւն առիւծուց (թագաւորաց) և որոտ հզօր առիւծուց. անդ շրջէր արու առիւծ ընդ մատակ առիւծու և ընդ կորեան իւրում, և չէր որ զարհուրեցուցանէր զնոսա։ Որչափ ինչ բաւականն էր՝ պատրաստէր

կորեանց իւրոց և հեղձուցանէր վասն առիւծուց իւրոց մատակաց, և լնոյր որսով զմորիս իւր և զբնակութիւնս իւր յափշտակութեամբ» (Նաւ. Բ. 8. 11, 12 ըստ Եբր. բն.)։

**37.** Ինչպէս ուրիշ հայ իշխանաց յիշելոց ի Խորենացւոյն նոյնպէս Պարուրի գալով՝ չունինք ամենեին ապացոյց, թէ այսու անուամբ եղաւ իշխան կամ թագաւոր Հայոց. բայց թէ Հայք, իբրև Արարատեան թագաւորութիւն, գտնուեցան ի մէջ ազգաց, որ տուին վախճան հզօր պետութեանն Ասորեստանի՝ զայսմանէ չիք տարակոյս (տես էջ 52, 53)։

Դժբախտութեամբ մեր ծերունի պատմիչը կը սիրէ խրթնութիւն։ Ի սկզբան ԻԱ. գլխոյ առաջին գրոցն, նախ քան զսկսանելն խօսել զՊարուրէ՝ կը դնէ մթին յառաջաբան մը, որոյ ոչ միտք և ոչ նպատակ յայտնի է։ Արդ, ասէ, ուրախ եմ յոյժ, քանզի հասայ մեր պատմութեան այն տեղն, ուր հայ իշխանաց սերունդը կը հասնի յաստիճան թագաւորութեան։ Ուստի գործ մեծ առաջի կայ մեզ, և յիշել բազում ինչ որոց զհիմունս յաջողեցաւ մեզ կարդալ ի չորս գիրս ճարտարախօսին և իմաստնոյ, նա մանաւանդ իմաստնագունին քան զայլս. «Եւ այժմ ահա զուարճացայց ոչ փոքր ինչ կրելով խնդութիւն, հասանել ի տեղիս մերում իսկ բնիկ նախնւոյն, յորում սերունդք թագաւորութեան հասանեն յաստիճան։ Վասնորոյ արժան է մեզ աստանօր մեծ գործ կատարել, և բազումս ասել առարկութիւնս ճառից, զորոց մեզէն իսկ հիմունս այսպիսեաց բանից ընթեռնուլ արժանաւորեցաք ի չորս հագներգութիւնս արգասաւորին ի բանս և զիմաստնոյն իսկ, և զմէջ իմաստնոցն իմաստնագունի» (Խոր. Ա. ԻԱ.)։ Թէ ո՛վ էր այն «արգասաւորն ի բանս» և «իմաստունն» և «ի մէջ իմաստնոց իմաստնագոյնն,» և ինչ էին այն «բազում առարկութիւնք ճառից զորոց զհիմունս ի չորս հագներգութիւնս արժանաւորեցաւ ընթեռնուլ» Խորենացին՝ յայտնի չէ։ Կ'երևի սակայն, թէ այն չորեքին գիրք չէին զՊարուրէ և զյաջորդաց նորա, քանզի, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև՝ ինքն Խորենացին, կը խոստովանի, թէ զանուն և զգործս Պարուրի և յաջորդաց նորա առած է յայլմէ աղբերէ։ Հոս դիտողութեան արժանի սա է, զի Խորենացին իսկ կը վկայէ, թէ զպատմութենէն Վարբակայ այլ ազգ կարծիք կային առ իւրով ժամանակաւ։ Քանզի յետ վերոյիշեալ յառաջաբանին և զկնի յիշելոյ համառօտիւ զպատմութիւն Վարբակայ և Պարուրի՝ ասէ. Եթէ այլք այլազգ կը պատմեն զայս՝ մի զարմանար, վասն զի, զոր ինչ կանխաւ ասացաք զանիմաստասիրութենէ նախնեաց մերոց՝ զնոյն ասեմք և աստ։ Նաբուգոդոնոսորայ հօր քաջութիւնք գրե-

ցան յիշողութեան վերակացուաց ձեռօք, իսկ մերքն չխորհեցան այսպէս առնել, ուստի և (մերոց գործք) գրեցան ի յետնոց. «Այլ այս եթէ առ այլս այլազգաբար պատմի՝ մի ինչ սքանչանար։ Զի որպէս վերագոյն ուրեմն յառաջին ճառսն ամբաստանեցաք զառաջին նախնեացն մերոց անիմաստասէր բարուց ախորժակս՝ այս հանդիպի և աստանօր։ Քանզի որք ի հօրէն Նաբուգոդոնոսորայ գործք՝ գրեցան յիւրեանցն յիշողութեանցն վերակացուաց, իսկ մերոցն ոչ այսպիսի ինչ խորհեցելոցն՝ մնացին նշանակեալ ի վերջինսն» (Խոր. Ա. ԻԱ)։ Խորենացին, որչափ կը հասկնանք, կամի ասել, թէ որովհետև գործք Պարուրայ և յաջորդաց նորա չգրըւեցան ի ժամանակակցաց՝ յետինք գրեցին զնոսա, ուստի և տարբեր կը խօսին քան զիս, որ կ'առնում «ի հնոցն դիւանաց Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից»։ Բայց անցնինք. ասէ, մեր արքայն կամ մանաւանդ թագաւորաց, որ տարեցան մինչև Պարթևաց տէրութիւնը։ Քանզի այս մարդիկը, թագաւորք մեր, սիրելի են ինձ իբրև ընիկք, արեանառուք և հարազատք։ Երանի՛ թէ յայնժամ գար փրկիչն զիս գնել, և ես առ նոքօք գայի յաշխարհ զուարճանալ տէրութեամբ նոցա, և արդի տագնապը չկրել. բայց չհասանք այն բարեբախտութեան, և այն վիճակն ևս (թագաւորութիւնը) փախաւ մենէ. «Այժմ անցից ի թիւ մերոց արանց, մանաւանդ թագաւորաց, մինչև ցտէրութիւնն Պարթևաց։ Քանզի ինձ այսոքիկ արք ի մերոյ թագաւորէն սիրելիք, որպէս բնիկք և իմոյ արեան առուք և հարազատք։ Եւ սիրելի էր ինձ յայնժամ գալ փրկչին և զիս գնել, և առ նոքօք յաշխարհ զմուտն իմ լինել, և նոցա տէրութեամբն խրախճանալ, և յարդեացս վտանգից ապրել։ Այլ վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումն այն, թէ արդեւք և վիճակ» (Խոր. Ա. ԻԲ.)։

Բնիկ, արեանառու, հարազատ բառերէն Յովհաննէս Կաթողիկոս պատմիչ, ինչպէս կը տեսնուի, հետևցնելով, թէ նախարդք Պարուրի չէին բնիկ հայ՝ սա պատմութիւնը կ'հնարէ։ Յետ Անուշաւանայ, ասէ, ոչ որդի և ոչ ազգականք նորա ժառանգեցին զիշխանութիւնը, այլ օտար ցեղէ մարդիկ բռնութեամբ գրաւելով իշխանութիւնը՝ տիրեցին Թորգոմեան ազգին, ոչ յաջորդութեան այլ աշխարհակալութեան իրաւամբ. «Ի զարմից նորա (Անուշաւանայ) և զաւակաց ոչ տիրեալ զառանէին հայրենի նահապետութեանցն. այլ այլք ոմանք բռնակալեալք ոչ ըստ ազգի, այլ ըստ յառաջադիմութեան տիրեալ Թորգոմեանս գրոհի, որոց անուանքն են Պարէտ, Արբակ... Սկայորդի. յետ ամենեցուն սոցա Պարոյր անուն յազգէ Հայկայ, զանազգիսն ի բաց լքեալ, և զնահապետութիւն ազգի

խրոյ վերստին նորոգեալ պալատըն» (Յովհ. Կաթ. Գլ. Բ.)։ Յովհաննու Կաթողիկոսի այսպէս վճռողաբար խօսելէն ոմանք կը կարծեն զնա ստացէչ Մարիբասեան օրինակի մը, և ուղղակի անոր ընծանեալ կը դնեն այն պարագայն, զոր թողեալ էր Խորենացւոյն։ Յայտնի է սակայն, թէ յիշեալ պարագայն ի պատմութեան Յովհաննու Կաթողիկոսի մակաբերութիւն է։ Կոչել Խորենացւոյն զՊարոյր և զյաջորդս նորա «բնիկ, արեանառու և հարազատ» ոչ թէ կը ցուցնէ, թէ քան զնոսա առաջինք օտարազգի էին, քանզի Պարուրի նախորդն Սկայորդի՝ ըստ նոյն պատմութեան, հայր էր Պարուրի, այլ Խորենացին հաւանականապէս զՊարուրեանս, իբրև Հայկայ սերունդ՝ կը կոչէ բնիկ և հարազատ, համեմատութեամբ յաջորդ հարստութեան Արշակունեաց զորս օտարազգի կը համարէր։ Յովհաննու Կաթողիկոսի ենթադրութեան նման կամայական, երբեմն նաև պառաւական վէպեր զժբախտութեամբ շատ են առ պատմիչս մեր, մանաւանդ առ յետինս։ Ի սկզբան պատմութեան Սեբէոսի անծանօթ ոմն կը կցէ այլանդակ պատմութիւն մը, կոչելով «Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ մատեան», որ որպէս թէ յԱգաթանգեղոսէ գրոշմեալ էր յարձանի հրամանաւ Տրդատայ ի Մծբին հանդէպ դրան ապարանից Սանատրկոյ, բայց յետոյ ծածկեալ ընդ աւերակօք։ և յետ ժամանակաց, մինչ աւերակները կը բանային սիւներ հանելու ըստ հրամանի Պարսից արքային՝ ըստ դիպուց իմն գտնուած էր արձանը։ Թէ ով կամ երբ էր Պարսից թագաւորն առ որով գտնուեցաւ արձանագրութիւնը, և ով կամ երբ էր այն, որ զայս կը պատմէ և որ ասէ թէ գտաւ զայն արձանագրութիւն ի Միջագետս՝ յիշուած չեն։ Թէ տգէտ կամ խաբեբայ մարդիկ ժամանակաւ կը յօդէին այսպիսի սուտեր՝ զարմանալի չէ. այն է զարմանալի, զի առ մեօք իսկ ծանր խորհող մարդիկ կը թուին հաւատս ընծայել յետին դարուց տգէտ հեղինակաց անհամ պատմութիւններուն, որոց թեթև հաւատարմութիւն անգամ ընծայել չէ առողջ մտաց։ Առ ի չգոյէ ստոյգ և մանր տեղեկութեան զհին ժամանակաց՝ անցեալ դարերն ըստ առաջակային դատել, ենթադրութեանց և անհեթեթ ստուգաբանութեանց վրայ պատմութիւն հիմնել, մինչդեռ ոչ պատմական և բանասիրական ուսմունք և ոչ սկզբունք անաչառ քննադատութեան յարգի էին, և ի պատճառս այսցիկ անպատիժ մնալ գրական խաբէութեանց՝—այս ամենայն, ինչպէս նաև ազգային և կրօնական նկատմունք և նախապաշարմունք և միտումն ի հրաշալիս և այլ բազում ինչ, պատճառ եղան, զի ծագմանէ մատենագրութեան կամ ի սկզբանէ պատմական ժամանակին մինչև ցերևել բանասիրական և քննադատական ուսմանց յընթացս վերջին երկու դա-

րուց՝ հին ազգաց գրեթէ ամենուն մէջ պատմութեան մատեանք մեծաւ մասամբ լի են անտեղութիւններով, մանաւանդ երբ կը խօսին զդէպաց՝ որոց չեն ժամանակակից։ Ուստի քանասիրական, հնագիտական, քննադատական և գրեթէ ուրիշ ամեն ուսման և գիտութեան մէջ համբակ և թերի ժամանակներ, ինչպէս ուրիշ ազգաց մատենագիրներուն, նոյնպէս մերայոց՝ բնական էր ենթադրել գէթ և մատեան, դիւաններ և տարեգիրներ՝ ուր և երբ այսօքիկ չգոյին և չկարէին գոլ։ Թողունք յԱրագած անուան զԱրմենակ, ի Մասիս անուան զԱմասիա տեսնելը. որ աւելի զարմանալին է՝ Մարանդ մեկնուած է իբր գերեզմանատեղի Նոյի կնոջ իբրև հասարակաց մօր, Նախճաւան՝ իբրև առաջին իջևան նոյն նահապետին յետ համաշխարհական ջրհեղեղին, Ակոռի՝ իբրև դարձեալ ի Նոյէ տնկեալ առաջին այգեստան, և այսպէս այս բառերն հայերէն կարծելով և ի նմին իսկ ի Նոյէ դրուած՝ եղան պնդողք, և թերևս կան ցարդ, թէ Հայոց լեզուն Նոյայ, ուստի և նախաջրհեղեղեան լեզուն է։

**38.** Խորենացին յառաջ քան սկսանելն զպատմութիւն յաջորդացն Պարոյրի, հարցնողներուն թէ ուստի՛ առած էր այն պատմութիւնը՝ կը պատասխանէ այսպէս. Եթէ հարցուի, թէ ուստի՛ գտանք այսպէս մեր այսչափ նախնեաց անուններն և գործերը՝ կը պատասխանենք թէ Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից հին դիւաններէն, վասն զի մեր նախնեաց անուններն և գործերն, իբրև այն տէրութեանց կողմանէ կարգեալ գործակալաց և վերակացուաց և մեծ կողմնակալաց՝ մտան յարքունի գրուածս նոցա (Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից)։ «Այլ եթէ ասիցեն, ուստի՞ մեզ զնախնեացն մերոց բազմաց այսպէս գտանել զանուանս և զգործս՝ ասեմ. Ի հնոցն դիւանաց Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից, վասն մտելոց անուանց և գործոց նոցա ի քարտէս արքունի, իբր գործակալաց և վերակացուաց աշխարհիս ի նոցանէ կարգելոց և մեծաց կողմնակալաց» (Խոր. Ա. ԻԱ.)։ Ի բանից աստի Խորենացւոյն կը հետևի նախ՝ թէ ի Խորենացւոյն այնպէս ցնծութեամբ թագաւոր կոչուած Պարոյր և յաջորդք նորա, նորին իսկ Խորենացւոյն վկայութեամբ, ոչ այլ ինչ էին եթէ ոչ Քաղդէացւոց և Պարսից կողմէն դրուած գործակալներ, վերակացուներ և մեծ կուսակալներ։ Մեր ծերունի պատմագիրն կամ հակառակ իւր կը խօսի, և կամ որոշ ինչ չի գիտեր զպաշտօնէ և զպատուոյ այնոցիկ՝ զորս թագաւոր կանուանէ։ Երկրորդ կը հետևի, թէ զանուանս և զգործս նոցա ոչ թէ Մար Իբաս, այլ Խորենացին գլխովին հանեց Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից դիւաններէն, թէպէտ այլուր ասէ, թէ Մար Իբաս բերաւ բոլոր այն պատմութիւնը Նի-

նուէր դիւանին մէջ գտնուած քաղդէական մատենէն։ (Խոր. Ա. Թ.)։ Ձերդ և ի ցէ՝ կ'անցնինք նաև զայսու հակասութեամբ, կը զարմանանք սակայն, թէ ինչպէս Խորենացին, ունելով առաջի իւր երից երևելի ազգաց, Քաղդէացւոց, Ասորեստանեայց և Պարսից դիւաններն, յորս գրուած էին անուանք և գործք նախնեաց մերոց իբրև գործակալաց և վերակացուաց, նա մանաւանդ իբրև մեծաց կողմնակալաց՝ ինչպէս յառաջ քան զՊարոյր, նոյնպէս յետ Պարուրի անուն միայն կը յիշէ առանց նշանաւոր ինչ գործ պատմելու մինչև Տիգրան, զորմէ երկայնագոյնս ճառէ լի գովեստիւք։

**39.** Մեր ծերունի պատմիչը կը ջանայ հաւատացունել մեզ, բայց հաւատալի չէ, թէ Քաղդէացիք և Պարսք ի դիւանս կամ յարքունի քարտէսս իւրեանց գրեցին զպատմութիւն Տիգրանայ, օտար թագաւորի, կամ մանաւանդ, դարձեալ ըստ նորին Խորենացւոյ, գործակալի կամ վերակացուի իւրեանց այնպէս մանր և երկար, մինչև յիշել զլինել նորա նախանձելի յետնոց՝ Հայաստանի հին սահմաններուն տիրելով, բազմացունելով «մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց, և զգեստուց և պէսպէս գունոց և անկուածոց արանց և կանանց միանգամայն, որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք», «պարարելով զհասակս ամենեցուն իւղով և մեղու», բարւոքելով զկարգս զինուութեան այնպէս, զի հետևակամարտք (ոտանաւոր զօրքը) լինէին «ի վերայ ուսոց ձիոց բերեալք, պարսաւորքն առհասարակ զիպագեղունք, և շերտաւորքն (բրով կռուողներ) ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք, մերկքն վահանօք և զգեստիւք երկաթոյ» ծածկեալ, մինչ զի «տեսիլ միայն» նոցա և «փայլմունք և շաղիւնք պահպանակաց և զինուց» նոցա բաւական էին զթշնամին հալածել. դարձեալ զառաքինութիւնս և զձիրս նորա, զորօրինակ զհամեստութիւն նորա «ի կերակուրս և յըմպելիս», զլինելն «մեծիմաստ, պերճաբան, պիտանի յամենայն իրս մարդկութեան», «արդարադատ», հաւասարասէր», աննախանձ, անարգամեծար, խնամոտ. նաև զհանգամանս մարմնոյն, այսինքն թէ էր «խարտեաշ, աղէբեկ ծայրիւ հերաց, երեսօք գունեան, մեղուակն, տնձնեայ, թիկնաւէտ, առոյգաբարձ և գեղեցկատես»։

Խորենացին յետ դնելոյ զնկարագիր անձին վարուց և կերպաց Տիգրանայ՝ կ'սկսի պատմել զաղերս բարեկամութեան նորա ընդ Աժդահակայ, սկսելով խնամութենէն ի մէջ երկուց թագաւորաց այսպէս. Սա (Տիգրան), ասէ, զառաջինն դաշնաւոր լեալ ընդ Աժդահակայ Մարաց թագաւորի՝ կուտայ նմա զքոյր իւր Տիգրանուհի կնութեան ի խնդրոյ նորին իսկ Աժդահակայ. քանզի այսու

խնամութեամբ կը յուսար Աժդահակ կամ հաստատուն սէր ունել առ Տիգրան, և կամ դիւրաւ տալ զնա սպանանել, վասն զի խնթիւ էր Աժդահակ ընդ Տիգրանայ, մանաւանդ զի դէպք մը պատահեցաւ, զոր չարագուշակ կը համարէր Աժդահակ։ Բայց պատճառ խիթալոյ նորա ի Տիգրանայ էր մտերիմ դաշնաւորութիւն սորա ընդ Կիւրոսի։ Այս մտերմութեան յիշատակաւ յաճախ կը փախչէր քուն ի նմանէ, և սակայն կը հարցունէր խորհրդակիցներուն՝ թէ որպիսի հնարիւք մարթ էր լուծել զկապ սիրոյն, որ ի մէջ Պարսկին և Հայոյն։ Մինչ այսպիսի շփոթ խորհրդովք յուզեալ էր Աժդահակ դէպք եղև նմա տեսանել երազ, որ թուեցաւ նմա լինել գուշակ մօտալուտ ինչ վտանգի։ «Սա նախ յառաջագոյն դաշնաւոր եղեալ Աժդահակայ որ ի Մարաց էր՝ առ նմա զքոյր իւր Տիգրանուհի կնութեան՝ ըղձիւք խնդրելով զնա Աժդահակայ։ Քանզի, ասէր, կամ ի ձեռն այսպիսւոյ մերձաւորութեան սէր հաստատուն առ Տիգրան ունել, կամ դիւրաւ այսպէս դաւաճանել զնա ի սպանումն։ Զի էր նմա խէթ կամաց իւրոց, մարգարէութիւն իմն յոչ կամաց լեալ նմա տեսլենական դիպուածն իւր։ Բայց էր նիւթ այսպիսւոյ խոհականութեան դաշնաւորութիւն մտերմութեան որ ի Կիւրոսէ առ Տիգրան, յորմէ բազում անգամ և տեսո քնոյ ի բաց փախուցեալ լինէր յԱժդահակայ յիշատակաւս այսուիկ. և խորհրդակցաց իւրոց անդուլ տանէր զհարցուածս վասն այսպիսւոյ պատճառի. Ո՞րպէս հնարիւք լուծանել կարասցուք, ասէ, զկապ սիրոյ պարսկայնոյն և հայկազնեան բազմաբիւրաւորի։ Եւ յայսպիսի շփոթման խորհրդոց հասանէ նմա տեսլենական յայտնութիւն ի ձեռն անրջականաց իմն նախատեսութեանց» (Խոր. Ա. ԻԴ. և ԻԵ.)։

Յետ այսորիկ Խորենացին կ'սկսի կարգաւ պատմել երազը, խնամութիւնը, դաւաճանութեան խորհուրդը, պատերազմն և մահ Աժդահակայ, այլովքն հանդերձ, զորս կրկնել հոս աւելորդ է (տես էջ 115—122 հանդերձ բնագրով)։

40 Ընդունինք թէ Տիգրան պատմական անձ է, և այս արդարև չէ բոլորովին առանց հաւանականութեան։ Քսենոփոն ի Կիւրոպեդիայն, ինչպէս արդէն տեսանք էջ 56—59, կը յիշէ Տիգրան անուն զոմն՝ արքայորդի Հայոց առ Կիաքսարաւ որդւոյ Աժդահակայ, ի մանկութեան ծանօթ և բարեկամ Կիւրոսի և որսակից նմա, և կը գովէ զնա իբրև իմաստնագոյն քան զհայրն. կը պատմէ և թէ Տիգրան ունէր առ իւր զոմն իմաստուն, զոր զարմանալի կը համարէր և զոր հայր նորա ետ սպանանել առ նախանձու։ Կիւրոս ևս կը յարգէր զայրն, մինչև ի լսել զմահ նորա գոչել, «Ո՜հ առնն։ Կ'երևի նաև, թէ առ Հայս իսկ, յառաջ քան զԽորենացին, չէր

անձանօթ Տիգրան, այլ կային հին երգեր ի գովեստ նորա առ Խորենացւով, որ ի յիշելն Տիգրանայ գովելի յատկութիւնները՝ կը յաւելու. «Զորմէ աւելին ի հնոց մեր որք բամբռամբն երգէին՝ լինել նմա և ի ցանկութիւնս մարմնոյն չափաւոր» (Խոր. Ա. ԻԴ.)։

Ընդունինք ևս, թէ Տիգրան էր մին ի թագաւորաց Հայոց Արշակունեան թագաւորութեան։ Բայց որպէս տեսցուք՝ հաւանական չէ, և ոչ իսկ հաւատալի, թէ ի դիւանս Քաղդէացւոց և Պարսից կը գտնուէր Տիգրանայ անձին այն երկայն նկարագիրը, զոր կը բերէ Խորենացին, և ոչ մանաւանդ ի մէջ Տիգրանայ և Աժդահակայ անցից պատմութիւնը, որ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ խառնուրդ Վեպայի առասպելի մը, զոր արդէն յիշեցինք էջ 51, և պատմելոցն զԿիւրոսէ առ Հերոդոտեայ՝ Տիգրանայ վրայ յարմարցուած, լի անտեղի պարագաներով և հակառակ ժամանակակից պատմութեան, ինչպէս պիտի տեսնենք ի սորին։

Չէ պարտ զարմանալ, թէ լի անտեղութեամբ կոչեցինք Տիգրանայ պատմութիւնը։ Խորենացին կամելով մեծ քան զամենայն աշխարհակալ թագաւորս ցուցանել զՏիգրան՝ կատարել կու տայ նմա այնպիսի գործ մը, զոր պարսկական պետութեան հզօրագոյն ժամանակին անգամ չկրցան վճարել Դարեհ և Քսերքսէս պէս թագաւորք, այն է նուաճել զՅոյնս։ «Սա (Տիգրան), ասէ Խորենացին, և զՅոյնս ոչ սակաւ ժամանակս ընդ իւրև նուաճեալ հնազանդէր» (Խոր. Ա. ԻԴ.)։ Ո՞ր Յոյները. Եղլադայի և Պելոպոնեսի, թէ յունական գաղթականութեանց, որ Փոքուն Ասիոյ արևմտեան եզերքն էին, կամ թերևս Արքիպեղագոսի կղզեաց։

Բայց Տիգրան, ըստ Խորենացւոյն, ոչ միայն զՅոյնս նուաճեց, այլև Մարաց տէրութիւնը ջնջեց օգնականութեամբ Կիւրոսի. «Կիւրոսի աջակցեալ զՄարացն ի բաց բառնալով զիշխանութիւնն» (Խոր. Ա. ԻԴ.), և որ աւելի զարմանալին է՝ նաև զտէրութիւնն Պարսից յինքն յափշտակեց, և զայն՝ կամօք և յօժարութեամբ Կիւրոսի. «Օժանդակ կամօք և յօժարութեամբ զԿիւրոս ունելով՝ զիշխանութիւնն Մարաց և Պարսից յինքն յափշտակեաց» (Խոր. Ա. ԼԱ.)։ Չենք գիտեր, թէ Խորենացին այսպիսի չափազանց և անհեթեթ պատմութիւններով փառաւո՞ր թէ ծաղրելի ցուցնել կ'ուզէ մեր պատմութիւնը։

**41.** Խորենացւոյն պատմութեան այս մասին մէջ ևս կը գտնենք երևելի հակասութիւն մը։ Խորենացին յետ դնելոյ զՊարոյր առաջին թագաւոր և նովաւ բարձեալ զօտար լուծն ի պարանոցէն Հայոց՝ առ Տիգրանաւ, զոր իններորդ կը դնէ ի Պարուրէ՝ զՀայս տակաւին ընդ օտար լծով կ'ենթադրէ, քանզի ասէ. Սա (Տիգրան)

զմեզ որ ընդ լծով էիմք՝ արար լծադիր և հարկապահանջ.—«Զընդ լծով կացեալսս՝ լծադիրս և հարկապահանջս կացոյց բազմաց» (Խոր. Ա. ԻԴ.)։ Ապա առ Տիգրանաւ, ո՛չ թէ առ Պարուրիւ ազատեցան Հայք յօտար լծոյ։

**42.** Խորենացին, կամ այլ ո ոք և է հեղինակ պատմութեան անցից ի մէջ Տիգրանայ և Աժդահակայ՝ կը ջանայ ցուցնել, թէ Աժդահակ կասկածելով ի բարեկամութենէն Տիգրանայ ընդ Կիւրոսի՝ կը խորհէր դաւ գործել նմա, և խնդրեց զքոյր նորա Տիգրանուհի կնութեան, կարծելով թէ այնու խնամութեամբ դիւրին լինելոց էր նմա գործ դաւաճանութեանն։ Սակայն, թող զանմիաբանութիւնն զոր պատմութիւն Խորենացւոյն ունի ընդ ժամանակակից պատմութեան՝ կան ի նմա անտեղութիւններ, որ առանց այն անմիաբանութեան ևս բաւական էին անհաւատալի գործել պատմութիւնը։ Դիցուք թէ այնպէս չար և նենգամիտ էր Աժդահակ՝ մինչև ընտրել դաւաճանութեան վատ միջոցը, և զայն յետ խառնելոյ սէր և բարեկամութիւն ընդ Տիգրանայ ի ձեռն խնամութեան. բայց միթէ նաև այնչափ անմիտ էր, մինչև զիւր նենգաւոր խորհուրդ յայտնել համօրէն ժողովոյ նախարարաց։ Աժդահակ այսպիսի խորհուրդ մը հազիւ կրնար մի կամ երկու շատ հաւատարիմ արքանեկաց իւրոց յայտնել գաղտ։ Բայց Աժդահակայ յիմարութիւնն յայնմ է մանաւանդ, զի զայն սոսկալի դաւաճանութիւն կը խորհի կատարել ի ձեռն Տիգրանուհւոյ։ Միթէ գիտէր Աժդահակ, թէ Տիգրանուհի յանձն առնլոց էր լինել գործիք այնպիսի սոսկալի եղեռնագործութեան, և եթէ առնոյր ևս յանձն, միթէ անձամբ պիտի սպանանէր զեւր եղբայրը։ Եւ եթէ այն դաւաճանութիւնը, որպէս պատմութիւնն իսկ ասէ, պիտի կատարուէր ի ձեռն «մատերմաց, ընչիւք և խոստմամբ պատուոց», և Աժդահակ այնչափ ինչս ունէր մինչև մարթել «զմտերիմս և զկուսակալս Տիգրանայ զանձիւք ի նմանէ ի բաց մերկանալ՝ զի՞ պիտոյ էր խնդրել զձեռն Տիգրանուհւոյ։ Զտիգրանուհի դաւաճանութեան խառնելով գործն աւելի կը դժուարանար։ Մտերիմ մը կամ կուսակալ մը հրապուրել ի դաւաճանութիւն գանձուք և պատուոյ խոստմամբ թերևս դիւրին էր, բայց ոչ այնպէս քոյր մը համոզել լինել եղբայրասպան, մանաւանդ զՏիգրանուհի, «զգեղեցիկն ի կանայս և խոհեմ», ըստ վկայութեան նորին իսկ Աժդահակայ։ Հոս կայ նաև հակասութիւն մը։ Աժդահակ որ ի սկզբան, ի խորհրդի անդ նախարարաց ասէր. «Զայս ոչ ի ձեռն գանձուց և ոչ ի ձեռն բանից պատրողաց այժմ առ մեզ հնարաւորութիւն է կատարել»՝ յետ խնամութեանն դարձեալ նոյն միջոցներով, այսինքն «ընչիւք և խոստմամբ պատուոց» կը յու-

տալ կատարել դաւաճանութիւնը.—«Զի այսպիսի արտաքսեալ և եկամուտ (սուտ, կեղծ) հարազատութիւնք համարձակ զդաւեալն մարթացուցանեն ... իւրոց մտերմաց ընչիւք և խոստմամբ պատուոց տալ հրաման սրով խողխողել, և կամ դեղոց հնարիւք, և կամ զմտերիմս նորա և զկուսակալս գանձիւք ի նմանէ ի բաց մերկանալ»։ Միթէ հրապուրել զմտերիմս և զկուսակալս Տիգրանայ ընչիւք և պատուոց խոստմամբ սպանանել զթագաւոր իւրեանց կախեա՞լ էր ի լինելոյ Տիգրանուհւոյ կին Աժդահակայ։

Միւս ևս անտեղութիւն ի պատմութեան տառ սա է, զի ասէ, թէ Աժդահակ խաբուելով ի Տիգրանուհւոյ, որ յետ հաւանելոյ կեղծեօք ընդ առաջարկութիւն նորա, դաւաճանութիւնը գաղտ իմացուած էր եղբօր իւրում՝ զՏիգրան հրաւիրեց երկու տէրութեանց սահմանագլուխը, և ոչ ուրիշ տեղ.—«Ի տեղի միջոց սահմանաց երկուց թագաւորութեանց»։ Աժդահակ կարևոր գործի համար բարեկամ և խնամի թագաւոր մը ապաքէն կ'հրաւիրէր իւր տէրութեան մայրաքաղաքը, և կամ ինք կ'երթար առ նա։ Այս անսովոր հրաւէրը ո՞չ ապաքէն կասկած կ'յարուցանէր ի միտս Տիգրանայ, և Աժդահակ չխորհեցա՞ւ զայս։ Անտարակոյս Աժդահակայ խորհուրդն այս էր—ի սահմանագլխի անդ տալ խողխողել զՏիգրան, բայց ընչպէս և որո՞յ ձեռօք. միթէ շահա՞ծ էր Աժդահակ ընչիւք և պատուոյ խոստմամբ զօք ի մտերմաց կամ ի կուսակալաց Տիգրանայ. զայսցանէ կը լռէ պատմութիւնը։ Արդարև անհամ առասպել։

Խորենացին որ զՏիգրան կամէր ցուցանել իբրև զմին ի մեծամեծ աշխարհակալաց Ասիոյ, տալով նմա նուաճել զՑոյնս և «յինքն յափշտակել զտէրութիւն Մարաց և Պարսից»՝ կանխելով կու տայ նմա կարգել և յարդարել իւր զինուորական զօրութիւն և ահագին բանակ մը կազմել։ Զօրքն, ասէ, որոց զէնք էին առաջ պարսատիկ և շերտ, և հետոյ կ'երթային գրեթէ մերկ՝ (առ Տիգրանաւ) առ հասարակ վառեցան աղեղամբք, սուսերօք և նիզակօք, և պատեալ զրահիւք և վահանօք՝ ձիով կ'երթային, այնպէս որ երբ ի մի վայր կու գային՝ տեսիլ նոցա և շողիւն պահպանակաց նոցա և զինուց բաւական էին ահիւ հալածել զթշնամին։ «Հետևակամարտքն (լինէին) ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն՝ առ հասարակ գիտաղեղունք, և շերտաւորքն՝ ի սուսեր և ի տէգ նիզակի վառեալք, մերկքն՝ վահանօք և զգեստիւք երկաթոյ պարածածկեալք։ Որոց ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն, և որ ի նոցայցն պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք՝ զթշնամին արտահալածել» (Խոր. Ա. ԻԴ.)։ Դժուարին է սակայն հաւատալ,

թէ ժողովուրդ մը, որ յետ ընկճեալ մնալոյ դարերով գրեթէ առանց զինուց և զինուորութեան ընդ օտար լծով, այն ինչ սկսած էր որով, նիզակաւ և աղեղամբ վառեալ հետևակ և հեծեալ ունենալ և ի մօտոյ ճակատ յարդարելով կռուել սորվիլ՝ յանկարծ այնպէս զօրացաւ մինչև տիրել Փոքուն Ասիոյ, զՅոյնս հնազանդեցնել և ջնջել Մարաց թագաւորութեան պէս աշխարհակալ տէրութիւն մը ի հզօրագոյն ժամանակի նորա, որպիսի էր ժամանակ Աժդահակայ, սպաննելով զնոյն ինքն զԱժդահակ և գերի վարելով զկին նորա և զորդիս։

Իսկ Աժդահակայ զերազէն երկար խօսել աստ աւելորդ է։ Երազն հասարակաց տեղի էր հին պատմագրաց շատերուն, որք երևելի անձին ուրուք զվարս թափուր կը համարէին ի պայծառութենէ՝ առանց երազի մը հրաշալեաց։ Այսպէս Յովսէփ, Փարաւոն, Նաբուգոդոնոսոր երազ կը տեսնեն. Աղեքսանդրի անգամ ապագայ մեծութիւնն երազով կը գուշակուի։ Բայց մեր դարը, որ երազն երազ միայն գիտէ և ոչ աւելի ինչ՝ չկարէ տեղի անգամ շնորհել երազոց ի պատմութեան, թող թէ պատմութիւն հիմնել ի վերայ երազոյ։

Բայց թողունք անտեղութիւններն. ինչ որ Խորենացին կը պատմէ զԱժդահակայ, զԿիւրոսէ և զբարձմանէ թագաւորութեանն Մարաց և Պարսից՝ հակառակ է պատմեալցն զնմին Կիւրոսէ և զթագաւորութենէն Մարաց և Պարսից ի գիրս Հրէից, որ ժամանակակից կամ շատ մօտ են ժամանակաւ, նաև ունին ի մօտոյ վերաբերութիւն պատմուածներուն, ինչպէս տեսանք էջ 61։

Ըստ Խորենացւոյն՝ Կիւրոս թշնամի էր Աժդահակայ և հեռամուտ թագաւորութեան նորա, որ բարձաւ մահուամբ Աժդահակայ ի ձեռն Տիգրանայ. և որ առաւել զարմանալին է՝ նաև Պարսից թագաւորութիւնն անցաւ առ Տիգրան, ուր ըստ պատմութեան Քսենոփոնի, որ ժամանակակից և միջամուխ էր գործոց Պարսից՝ ոչ միայն բարեկամութիւն այլ և ազգականութիւն կար ի մէջ Մարաց և Պարսից, քանզի Կիւրոս թոռն էր Աժդահակայ ի դստերէ նորա Մանդանեայ և ժառանգեց մանաւանդ քան թէ նուաճեց զթագաւորութիւնն Մարաց յետ Կիաքսարայ մօրեղբօր իւրոյ, որ մեռաւ անորդի։ Հրէից մատեանք, ոչ յայտնի, սակայն լռելեայն, կը հաստատեն զայս միաբանութիւն Մարաց և Պարսից. քանզի ի պատմելն զառն Բաբելոնի ի ձեռն Մարաց՝ յանուանէ կը յիշեն զԿիւրոս իբրև գլուխ և առաջնորդ գործոյն (տես էջ 61)։ Նոյնպէս կոչելով զպարսկական պետութիւնն տէրութիւն Մարաց և Պարսից՝ կը ցուցնեն այն երկու տէրութիւնը միացեալ մանաւանդ . քան նուա-

երկոտասան քաղաքս Յունաց՝ ած զբնակիչս նոցա անդր։ Բայց որգել եղև նմա ի կատարումն գործոյն յարձակումն Ղուկուղղեայ, յաղթողին Միհրդատայ։ Ղուկուղղոս հրաման տուեալ բնակչաց Տիգրանակերտի դառնալ ի քաղաքս ծննդեան իւրեանց, և այնպէս խափանեցաւ նոր մայրաքաղաքն, որ կիսով չափ միայն շինուած էր, և եղև գիւղ աննշան» (Ստրաբ. դպր. ԺԱ. 15)։ Այսչափ միայն գիտէ Ստրաբոն. բայց յետոյ հռոմայեցի կայսերք մինչև Շապուհ նորոգելով ամրացուցին զՏիգրանակերտ, այնպէս որ երբև հարիւր ամի յետոյ քան զՍտրաբոն՝ Տակիտոս, պատմիչ հռոմայեցի զՏիգրանակերտ կ՚անուանէ «քաղաք հզօր մեծութեամբ պարսպացն»։ Ուստի այն պարիսպք, զորս «նախարարար արքար» Շապուհ «հոծեալ և յարմարեալ» էին ոչ ի Հայկազնոյն Տիգրանայ և ոչ յԱրշակունեաց, այլ ի Հռոմայեցւոց։

Բայց կան այլ պատմական և բանասիրական պատճառք, յորոց սակս չէ մարթ զՏիգրանակերտ շինեալ դնել առ Արտաշեսեան թագաւորութեամբ։ Տիգրանակերտ է ի Միջագետս, որ առ մեծաւ Տիգրանաւ միայն եղաւ կարճ ժամանակ մասն Մեծին Հայոց։ Կորիւն զՏիգրանակերտ կ՚անուանէ քաղաք Ասորւոց.—«Երթեալ հասանէր (Մեսրոպ) ի կողմանս Արամի, ի քաղաքս երկուս Ասորւոց, որոց առաջինն Եդեսիա կոչէր, և երկրորդն՝ Ամիդ անուն»։ *Կերտ* մասնկանէն ևս յայտնի է, թէ չէ մարթ զՏիգրանակերտ այնպէս հին համարել, որպէս դնէ Խորենացին։ Քան զ*կերտ* առաջ են հայերէն *շէն* և *աւան*, ինչպէս կը տեսնենք ի հնագոյն անուանս, որպէս Շակաշէն, Նախճաւան։ Յետ Դարեհի, երբ պաշտօնական լեզու եղաւ պարսկերէնը՝ մուծաւ *կերտ*, ինչպէս նաև *շատ* և *պատ* որ միևնոյն իմաստն ունին, որպէս Երուանդակերտ, Արտաշատ, Վաղարշապատ, և յայտնի է թէ համեմատութեամբ յետնագոյն են, այն է առ Արշակունեօք։ Ընդհանրապէս աւան բառը գործածել սովոր էին նախնիք մեր, ինչպէս Զարեհաւան, Բագաւան, իբրև քաղաք Զարեհի, քաղաք Բագնաց։ Զնոյն իսկ Տիգրանակերտ Խորենացին կ՚անուանէ աւան, ինչպէս տեսանք վերը։ Քաղաք, այսինքն *խալաճ* (գալէ),—բերդ, ամրոց՝ սեմական բառ է, մուծեալ ի հայերէն, թէպէտ շատ հին, քանզի Վարդգեսի երգին մէջ կը գտնենք գործածուած. «Ելեալ նստեալ զԱրտիմէդ քաղաքաւ»։

**43.** Հեղինակ Մարիբասեան պատմութեան զՏիգրանայ և զԱժդահակայ, տեսնելով առ Քսենոփոնի Տիգրան զոմն հայ, բարեկամ Կիւրոսի և գործակից ի պատերազմունս նորա, Հերոդոտոսի մէջ ևս կարդալով Աժդահակայ երազը, և հրամանաւ նորա ի գործ դրուած միջոցներն ի կորուսանել զԿիւրոս, յորմէ որպէս թէ կը

կասկածէր Աժդահակ (Հերոդ. գլր. Ա. 127)՝ զԿիւրոսէ պատմուած առասպելը կը դարձունէ Տիգրանայ վրայ։

Ըստ Հերոդոտոսի Աժդահակ երազ կը տեսնէ, թէ ի դստերէն իւրմէ ծնեալ որդին Կիւրոս կործանելոց էր Մարաց տէրութիւնը։ Այս երազին վրայ կը խռովի Աժդահակ, խորհուրդ կը խնդրէ յի-մաստնոց. Կիւրոսի ազգականին Արբակայ կը յանձնէ դաւ գործել Կիւրոսի. Արբակ կը խնայէ Կիւրոսի, և հնարիւք կ՚իմացնէ նմա Աժդահակայ նենգութիւնը. Կիւրոս զօրօք կու գայ Աժդահակայ վրայ, և բռնելով զնա գերի՝ կը տիրէ Մարաց և Պարսից։ Մար Իբասայ պատմութիւնն ևս ո՛չ ապաքէն նոյն է։ Աստ ևս երազով կը յայտնուի Աժդահակայ, թէ ծիրանազգեստ կնոջէ (թագուհո-ւոյնէ) ծնած դիւցազնի մը (Տիգրանայ) ձեռօք Մարաց տէրութիւ-նը պիտի կործանէր. Աժդահակ կը խռովի, ի խորհուրդ կը կոչէ նախարարները. Տիգրանայ ազգականին, այն է քեռ նորա կ՚ա-ռաջարկէ դաւել զՏիգրան. Տիգրանուհի զթալով եղբօրը՝ գաղտ կ՚իմացնէ նմա նենգութիւնը. Տիգրան զօրօք գալով կ՚սպանանէ զԱժ-դահակ և գերի կը տանի զամենայն տուն նորա։

**44**. Անհիմն է նաև ասել Խորենացւոյն, թէ Մասեաց արևե-լեան կողման Մարք ի Տիգրանայ բերուած գաղթականութիւն էին Մարաց գերիներէն, և թէ Վիշապազունք անուամբ յերգս վիպա-սանաց Հայոց կ՚ակնարկուի սերունդն Աժդահակայ, որ վիշապ կը նշանակէ.—«Ցայտնեն զայս ճշմարտապէս և թուելեացն երգք, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինևէտ գաւառին Գողթան, յորս շարին բանք երգոցն զԱրտաշիսէ և զոր-դւոց նորա, յիշելով այլաբանաբար և զզարմիցն Աժդահակայ՝ վիշա-պազունս զնոսա կոչելով. զի Աժդահակդ ի մեր լեզուս է վիշապ» (Խոր. Ա. Լ.)։ Եթէ չէ և չկարէ լինել ճշմարիտ այն պատմութիւն, թէ Տիգրան սպաննելով զԱժդահակ ջնջեց Մարաց տէրութիւնը, որպէս ցուցաւ էջ 192՝ ապա ինքնին կը ջրի նաև պատմութեան այն մասը, թէ Տիգրան գերի բռնելով «զԱնոյշ կին Աժդահակայ և զբազումս ի սերմանէ Աժդահակայ աղջկունս հանդերձ պատա-նեկօք և այլ բազում գերեօք, որչափ թէ աւելի քան զբիւր մի՛ բնակեցուցանէ յարևելեայ ուսոց մեծի լերինն (Մասեաց)» (Խոր. Ա. Լ.)։ Նա մանաւանդ գիտենք այլուստ, թէ Մասեաց արևելեան կողմը կը կոչուէր Մարք ո՛չ թէ ի պատճառս գերութեան Աժդահա-կայ, այլ վասն զի այն կողման բնակիչք ի վաղուց մար կամ մար-ակիւթացի ցեղեր էին (տես էջ 54)։ Ի հին մատենագիրս մեր, որ-պէս ասացաւ անդ՝ այն կողմերը կը կոչուին Մարք, և յերգս վի-պասանաց զՄարակերտէ ասի, թէ էր «ի մէջ Մարաց».—«Արտա-

ւանդեալ ոչ գտանել, քանզի որդւոյն Արտաշիսի, անդր տարածանելոյ ի հիմնանալն Արտաշատու՝ նա անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտն (Խոր. Ա. Լ.). և գիտեմք, թէ Մարակերտ էր ի դաշտին Տարօնոյ (Խոր. Անդ), որ էր յարևելից Մասեաց առ Երասխաւ։ Բակուր ոմն որ ի Խորենացւոյն կոչի իշխան Սիւնեաց, առ որ անկանի Տիգրան Բագրատունի (Խոր. Բ. ԿԴ.)՝ թուի լինել այն Բակուր, զոր Յոյն պատմիչք կ'անուանեն Թագաւոր Մարաց։

Վիշապազանց դիւրաւ ասեմք, թէ առ հնոյն Հայոց մնացորդ-ածանցն հաւատոյ էր, թէ վիշապք, այսինքն դևք ի գնդապարանս վիշապաց, կը բնակէին յամայի տեղիս, թէ տաճարներ ունէին; և թէ բռնելով զթագաւորազունս կը պահէին առ իւրեանս։ Եզնիկ ի գրելն զմնացականութեանց նախնի դիցապաշտ Հայոց կը յիշէ նաև հին Հայոց այս սնապաշտ հաւատքն ասելով. «Ոչ առաւելք իբրև մարդկան են նոցա (վիշապաց) ի բնութիւն, և ոչ զաք ի թագաւորազանց և ի դիւցազանց ունին կապեալ առ իւրեանս ի քաջա-նի» (Եզն. տպգր. Վենետ. 1826, էջ 104)։ Ուստի յասելն Հայոց վիպասանաց զԱրտաշիսէ, «խարդաւանանք լեալ նմին ի սանձարէն վիշապաց» (Խոր. Ա. Լ.), և զԱրտաւազդայ, թէ «վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին» (Անդ. Բ. ԿԱ.)՝ հաւանականագոյն է թէ կ'ակնարկեն վիշապաց առասպելն ըստ Եզնկայ, ոչ թէ Աժդահակայ զարմը, որպէս մեկնէ Խորենացին։

**45**. Բայց Տիգրանայ և Աժդահակայ կռւոյն կ'ակնարկէ ուրիշ հին առասպել մը, այն է Թրիդայի և Աժի-տահակայ առասպելը (զորմէ տես վերագոյն էջ 51), զոր թերևս հին Հայ երգիչք առած էին ի Զենտաւեստայ։

**46**. Ցասացելոց մինչև ցարդ զՄարիբասեան պատմութենէն յայտնի է տեսանել, թէ, ըստ մեզ, չէ մարթ ընդունել այն գործն իբրև վաւերական աղբիւր նախնական ժամանակի պատմութեան մերոյ, և ոչ առնուլ անտի իբրև ճշմարիտ՝ ինչ որ հաստատուած չէ ժամանակակից պատմութենէ, կամ գէթ հին ինչ աւանդութենէ և ազգային երգերէ։ Ոմանք կամին ենթադրել, թէ այսպիսի աւանդութիւններ և երգեր ունէր Խորենացին եթէ ոչ բոլոր պատմելոյն ի Մար Իբասայ՝ գէթ մեծագոյն մասին նորա։ Արդարև առ նախնի Հայս կային, անգիր ժամանակէն, աւելի կամ նուազ այլաբանական կամ բանաստեղծական ոճով յօրինեալ երգեր գեղջկաց ա-րանց, և Խորենացին փոյթ մեծ ունի բերել զնոսա, ուր և կը գտնէ, ի հանդէս պատմութեան իւրոյ, մերթ բառ առ բառ յիշելով, ինչպէս զաւանդն Տորքայի, Վարդգեսի երգը և գնդինչը երգերն, և մերթ զիմաստ նոցա միայն տալով, ինչպէս Տիգրանայ Մեծին

նէական մատենագրութիւնը: «Ճշմարտախօս ոք և բարեպաշտ, կը հարցուի—ասէ Շթրաուս—կրնայ գիր գրուած սուտութեամբ ընծայել այլում: Ոչ. բայց ինչ որ առ մեզ պարսաւելի է՝ գովելի էր ժամանակաւ: Գիտենք այսօր, թէ Նէոպիւթագորեանք առաջնոյ դարուն նախ քան զՔր., իբր եօթանասուն գիրք հրատարակեցին յանուն Պիւթագորայ կամ հնագոյն աշակերտաց նորա՝ փիլիսոփայական նոր վարդապետութիւններ քշելու. և այլ ոմն Նէոպիւթագորեան, հեղինակ վարուց փիլիսոփային՝ կը գովէ այն խորէութեան հեղինակներն իբրև փառասիրութենէ ազատ մարդիկ, որ զաշխատութիւն իւրեանց ընծայեցին վարդապետին: Ցերկրորդ դարու քրիստոնէական թուականին, Պօղոսի և Թեկղեայ կեղծ վկայաբանութիւնը գրող քրիստոնեայն, երբ յանդիմանուեցաւ իբրև խաբող՝ արդարացոյց զանձն ասելով. «Ի սէր առաքելոյն արարի». և եկեղեցին ոչ միայն չմերժեց սուտը, այլ և առանց ուրիշ վկայութեան, միայն ի հաւատս այն վկայաբանութեան՝ տօն հաստատեց ի պատիւ կուսին: Ինչ որ կրնար շինութիւն տալ՝ ճշմարիտ էր յայնմ դարու, ինչ որ վսեմ հին, ինչ որ արժանի առաքելոյ՝ առաքելական: Այսպէս ոչ սակաւ յարգի գրուածոց անուանք փոխ առնուած են: Ի՞նչ է Դանիէլի գիրքը, զոր յամառ միայն յօրթոտոքսաց կը համարին հարազատ, և Իմաստութեան գիրքը, զոր պաշտպանող գրեթէ չիք այսօր» (Շթրաուս, վարք Յիս. մուտք ԾԼ.): Արդի քննադատութիւնն հազիւ կարաց մաքրել նախնի մատենագրութեան մնացորդներն, ընտրելով զեկամուտն ի հարազատէն, և խարդախութեան առաջն առնուլ: Զարմանալի չէ տեսնել մատենագրական նենգութիւնն՝ բարի կարծուած նպատակներու հասնելու համար իբրև միջոց գործածուած այնպիսի ժամանակներ, մինչ սա սկզբունքը, թէ «Վախճանն արդարացուցանէ զմիջոցն»՝ գործնականապէս կը տիրէր: Ինչե՞ր օրինաւոր չհամարեցաւ այսու սկզբամբ առաջնորդուած մոլար և ծայրայեղ կրօնական նախանձը: Թողունք հաւատաքննութիւնը և խաչակրութիւնը, զերկուսին հրէշս միջին դարուց քրիստոնէութեան. ո՞վ օրինաւոր կը համարի այսօր հերետիկոս անուանելոց դէմ այն հալածումներն, որ, ոչ յետ բազմաց՝ յաջորդեցին հռոմայեցի կայսերաց արիւնահեղ հալածանաց, շատ անգամ ոչինչ նուազ անագորոյն քան զնոցայսն: Կորիւն գովութեամբ կը պատմէ քստմնելի տանջանքը, զոր բորբորիտոն կոչուած գնոստիկեանք կրեցին հրամանաւ Սահակայ և Մեսրոպայ՝ թելադրութեամբ Կոստանդնուպօլսոյ պատրիարքին (Խոր. Գ. ԾԷ. Թուղթ Ատտիկ. առ Սահակ և ԾԼ.): «Ապա յետ այնորիկ ձեռն արկանէր (Մեսրոպ) զդժպատեհ և ըղ-

կամակոր բարբարիոսաց աղանդն քննելոյ, և իբրև ոչինչ գտանէր հնարս յուղղութիւն ածելոյ, առեալ ի գործ արկանէր զթշուառացուցիչ գաւազանն, ծանրագոյն պատուհասիւք ի բանտս, ի տանջանս, ի գելարանս։ Իսկ յորժամ այսու ևս պակասեալ ի փրկութենէն գտանէին՝ խորտակելոյ, ապախանձելոյ, մրելոյ և գունակ գունակ խայտառակելոյ, և յաշխարհէն կորզէին» (Կորիւնի վարս Մեսր.)։

Խորենացին կը գրէր զպատմութիւն իւր յետ պատերազմին Վարդանանց, մինչ Վահան Մամիկոնեան և Սահակ Բագրատունի, իբրև ախոյեան հաւատոյ և ազատութեան՝ կը կռուէին ահկաւ ուժով ընդդէմ ահագին զօրութեան Սասանեանց։ Արդարև դժուարին էր ժամանակն ազգին համար, եթէ ոչ բոլորովին անյոյս։ Մի մասն նախարարաց, յորս երևելի էին Սիւնիք և Արծրունիք, միտագոյն ի Պարսիկս, եթէ ոչ բոլորովին բաժանեալ՝ գէթ ուծացեալ էր միւս մասէն, յորմէ կը նկատուէր իբրև ուրացեալ, և որ, իբրև ուխտապահ, իւրն թիկունք ունենալով կղերը, յուսացեալ էր ի Յոյնս իբրև ի հաւատակիցս, առանց բնաւ օգնութիւն տեսնելու։ Յայսպիսում անօգնական ժամանակի ամէն հայրենասիրի պարտքն էր՝ որ և իցէ միջոյաւ արծարծել ազգին կրօնական և հայրենասիրական ոգին։ Սոյն նպատակաւ և գրեթէ միևնոյն ժամանակ գրուեցան կամ թարգմանուեցան Ագաթանգեղոս, Բուզանդ, Եղիշէ և Փարպեցին։ Առաջինն՝ Ագաթանգեղոս, կը պատմէ Տրդատայ քաջութիւններն և ազգին դարձն ի քրիստոնէութիւն մեծամեծ նշանօք և արուեստիւք։ Բուզանդ, ի Խոսրովայ, յաջորդէն Տրդատայ, մինչև վերջին Խոսրով, կամ ի բաժանումն թագաւորութեան՝ երևելի արանց, գլխաւորապէս Մամիկոնեան ցեղին քաջութիւնները կը պատմէ ի պաշտպանութիւն եկեղեցւոյ և ազգին։ Վերջին երկուքն, Եղիշէ և Փարպեցին, կը պատմեն (առաջինը կը նկարագրէ մանաւանդ բանաստեղծական ոճով քան կը պատմէ) ուխտազանց և ուխտապահ կոչուած երկու կուսակցութեան գործերը։ Գրեթէ յամենեսին ի սոսա կը տեսնուին աւելաբանութիւն (չափազանցութիւն) և պատմել հրաշալիս, միջոցներ՝ որովք ոչ այլ ինչ կը դիտուէր՝ եթէ ոչ զարթուցանել ազգին եռանդը։

Մինչ ազգային մատենագրութիւնն այսու ոգւով և նպատակաւ կ'աշխատէր՝ Սահակ Բագրատունի կը խնդրէ Խորենացւոյն գրել զընդհանուր պատմութիւն Հայոց։ Խորենացին կը պատասխանէ Սահակայ այն խորին բայց դժուարիմաց նամակով, զոր կը գտնենք ի սկզբան պատմութեան նորա.—

Աստուածային շնորհաց և Հոգւոյն ազդումը քու խորհրդոցդ վրայ ծանեայ ի ձեռն գեղեցիկ խնդրոյդ, որով նախ քան զմարմինդ

քեզ այսպիսի այժմ երևալ ծանեաք՝ այս յայտ է ուրեմն. Թէ ամենեցուն քան զքեզ նախադասելոցն ճանաչիս վեհագոյն, և բարձրագունից արժանաւոր գովութեանց, և յայսպիսիս պատկանաւոր գնել յորձանագրութիւնս բանից։ Ցաղագս որոյ հեշտաբար ընկալեալ զքոյդ խնդիրդ՝ աշխատասիրեցայց անցել ի կատարումն, անմահ ի յիշատակ թողուլ զայս քեզ, և որ զկնի քոյինքն են գալոց ազգք։ Զի և ազգէ ես նախնեացն, և քաջ և արդարասէր՝ ոչ միայն ի բանս և ի պիտանաւոր խոհականութիւնս, այլ ի մեծամեծ և ի բազում գործս արժանափառս, զոր յիշատակեսցուք ի կարգի պատմութեանս, յորժամ զորդի ի հօրէ ծննդաբանելով ազգաբանեսցեմք զբովանդակն։ Իսկ զՀայաստանեայց նախարարութիւնս, զամենեցուն զաւառն և զգիւղօրէն յայտնելով համառօտ, որպէս հաւաստի ի յունականս ումանս կայ պատմութիւնս։

Ինչպէս կը տեսնուի այս նամակէն՝ Խորենացին ուրախութեամբ ընդունելով խնդիրը Սահակայ, զոր ոչ ճանաչէր անձամբ, գրեց զպատմութիւն իւր յերիս գիրս։ Խորենացւոյն պատմութեան գժուարագոյն մասն էր առաջին գիրքը, զոր կ'անուանէ «Ծննդաբանութիւն Հայոց Մեծաց», այսինքն պատմութիւն ծագման կամ նախնեաց Հայոց։ Այս մասին համար Խորենացին չունէր այլ աղբիւր բաց ազգային երգերու գոյզն մնացորդներէ։ Մար Իբասայ պատմութիւնն, եթէ ունէր Խորենացին այսպիսի պատմութիւն մը՝ չէր, ո՛չ ընդարձակութեամբ և ոչ ըստ նիւթոյն՝ այն զոր կ'ընծայեցնէ մեզ Խորենացին, ինչպէս յայտնի է այն պատմութեան ոճէն և ձևէն։ Այսպէս չէր կարող Խորենացին, ու ի չգոյէ աղբերաց, տալ այն նախնական ժամանակին ճիշդ պատմութիւնը. ուստի կը գրէ քերթողական ազատութեամբ մանաւանդ քան պատմական ճշդութեամբ համառօտ դիւցազներգութիւն մը, ուր գլխաւոր գործողք են երեք փիլիսոփայական անձինք—Հայկ, Արամ, Տիգրան, իբրև օրինակ քաջութեան և հայրենասիրութեան։ «Սիրեմ կոչել, ասէ Խորենացին, այսպէս ըստ քաջութեան, Հայկ, Արամ, Տիգրան. քանզի ըստ իմ քաջաց ազգք քաջքն, իսկ միջացքն՝ որպէս դէպ ումեք թուիցի կոչել» (Խոր. Ա. ԼԱ.)։ Խորենացին արդարև կը ջանայ որչափ հնար է պատմական կերպարանք տալ այս փիլիսոփայական մասին պատմութեան իւրոյ, բայց յայտնի է արուեստը, և չի կրնար այլազգ ընդունելի Հայկազանց պատմութիւնը՝ եթէ ոչ իբրև պատմական դիւցազներգութիւն, որում կատարեալ քերթողական ձևը տուաւ Բագրատունին իւր Հայկ կոչուած դիւցազնականին մէջ։ Թէ ինչպէս ընդունուեցաւ պատմութիւն Խորենացւոյն իւր ժամանակակիցներէն՝ յայտնի չէ։ Դիտողութեան արժանի

է սակայն, զի Փարպեցին, որ գիտէ զԽորենացին և ուրեք ուրեք գրեթէ բան առ բան կ՚օրինակէ ի Խորենացւոյն՝ չի յիշեր զնա, մինչ երկայն կը խօսի զԲուզանդայ և զԱգաթանգեղոսէ (Փարպ. Բ. Դ.)։ Զենոբ և իցէ՝ Հայկազանց կոչուած պատմութիւնն այնպիսի է մեր ընդհանուր պատմութեան մէջ, որպիսի է վէպն Հռոմուլոսի և առաջին յաջորդաց նորա ի պատմութեան Հռոմայեցւոց, կամ որպիսի են հոմերական դէպք զպատերազմէն Տրովայ և զհին դիւցազանց Հելլենացւոց։ Այսպիսի վէպեր հայրենասիրական եռանդով առեղծուած են, և կարեն լինել մասն ազգային ուսման, թէպէտ միշտ իբրև վէպ և ոչ իբրև պատմութիւն։ Բայց որևիցէ հին բերանացի կամ գրաւոր աւանդութիւն ըստ սկզբանց գիտութեան զատելով պատմութիւնն ի վէպէ որոշել՝ գործ է ոչ միայն ամէն անաչառ պատմագրի, այլ և ամեն լուսաւորեալ ընթերցողի։ Կը տեսնենք ժամանակ ժամանակ քննական յօդուածներ եւրոպական թերթերու մէջ, երբեմն նաև տետրակներ մեր պատմութեան այլևայլ աղբերաց վրայ, մինչ մեք այն աղբիւրներուն կը նայինք դեռ հին բարի ժամանակին միամտութեամբ։ Եղան արդարև և առ մեզ ոմանք, մանաւանդ մեր ռուսիացի համազգիներէն, որ հրատարակեցին մեր պատմութեան վերաբերեալ յօդուածներ՝ արժանի ուշադրութեան եւրոպացի հմուտ արևելագիտաց։ Բայց թող որ այս գրուածք մեծաւ մասամբ մասնաւոր գիտնական դիտողութիւններ են՝ ընդհանրապէս կը թուին ջանալ պաշտպանել մանաւանդ մեր պատմական աղբիւրները, քան քննել և ի լոյս հանել զառոյգ պատմական յորդ նոցա։ Ի դէպ և հարկ էր քննական ոգին պատմութեան առանձին մասերէն անել ի վերայ բոլորին։ Այս էր մեր դիտումը։ Ոչ փոքր համարձակութիւն էր սակայն դարերով գրեթէ ազգովին վաւերացեալ պատմութիւնը մը արկանել ընդ քննութեամբ. ուստի սպասեմք լսել ի բազմաց. Անդէպ կամ գէթ կանուխ չէ՞ր այսու ոգւով գրուած մը զազգային պատմութենէ, և ո՞չ ապաքէն խոհեմութիւն էր գէթ ժամանակ մի ևս թողուլ զազգն ի միամտութեան հին բարի ժամանակին։ Ըստ մեզ ոչ անդէպ էր և ոչ կանուխ, քանզի մեր այս գործն ուղղեալ է ազգին լուսաւորեալ մասին, այն մասին, որ գիտէ իննևտասներորդ դարուն քննադատական ոգին, և կամէր վաղուց տեսանել այն ոգին մուծեալ և յազգային պատմութիւն մեր. ազգին այս մասին համար հին բարի ժամանակն արդէն անցած է։



# ԳԼՈՒԽ Զ.

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑԻՈՅՆ

*1. Արշակ մեծ Պարթեւաց: 2. Վաղարշակ, եղբայր Արշակայ: 3. Արշակ քաջ եւ Արշակ մեծ: 4. Պատերազմ Վաղարշակայ յարեւմուտս. Մորփիւղիկէս: 5. Շինութիւնք Վաղարշակայ ի Հայս: 6. Արքունիք Վաղարշակայ. պաշտօնեայք պալատան: 7. Կարգք զինուորութեան. Նախարարութիւնք. Այլ շինութիւնք: 8. Օրէնք յարքունիս եւ արտաքոյ: 9. Անդրանկութեան օրէնքը. Հաշտեանք՝ ժառանգութիւն Արշակունեաց: 10. Արշակ յաջորդ Վաղարշակայ. Կոթող նորա յեզեր Պոնտոսի: 11. Նոր աղբիւր Խորենացւոյն. Ափրիկանոս. Դիւանք Եդեսիոյ, Սինոպայ: 12. Արտաշէս, յաջորդ Արշակայ. Մեծութիւն նորա. Խնամութիւն ընդ բդեշխին Վրաց: 13. Արշաւանք յարեւմուտս. Կրիսոս: 14. Ցոյն պատմիչք՝ զարշաւանաց Արտաշիսի. Պողիկրատէս, Եւագարոս, Կամադրոս, Փղեգոնիոս:*

**1.** Խորենացին լԸ. գլուխ առաջին դպրութեանն կը պատմէ թէ Արշակ մեծ, որ է Միհրդատ Ա. կամ Արշակ Զ., Պարթևաց թագաւորն, ապստամբելով Մակեդոնացիներէն և տիրելով բոլոր Ասիոյ՝ զեղբայր իւր Վաղարշակ թագաւորեցոյց Հայոց։ «Պարսից և Պարթևաց թագաւորն Արշակ մեծ, որ բուն Պարթև էր ազգաւ, ապստամբելով ի Մակեդոնացւոց՝ թագաւորեց բոլոր արևելից վրայ, և սպաննելով զԱնտիոքոս թագաւոր ի Նինուէ՝ հնազանդեցոյց զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ»։

Արշակ մեծ արքայ Պարսից և Պարթևաց, որ և ազգաւ իսկ Պարթև, ապստամբեալ, ասեն, ի Մակեդոնացւոցն, և թագաւորեալ ի վերայ ամենայն արևելից և Ասորեստանեաց, և սպանեալ զԱնտիոքոս թագաւոր ի Նինուէ, հնազանդեցուցեալ զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ։

**2.** «Այս Արշակ կը թագաւորեցունէ զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ Հայոց, պատշաճ համարելով այնպէս անշարժ կացուցանել զթագաւորութիւն իւր։ Քաղաք թագաւորութեան կու տայ նմա զՄծբին, նաև մասն մի յարևմտեան Ասորւոց և զՊաղեստին և

զԱսիա և զբոլոր Միջերկրայս (Փոքր Ասիա) և զԹիտալիա (Թեսաղիա?), Պոնտոս ծովէն մինչև անդր՝ ուր Կովկաս կը յանգի ի ծովն Արևմտեան (թերևս արևելեան, այսինքն Կասպից ծով) և զԱտրպատական։ Նաև ետ նմա իշխանութիւն որչափ և կարող էր՝ ընդարձակել զիւր տէրութիւն, քանզի, ասէ, քաջաց սահմանն է զէնք նոցա»։

Սա (Արշակ մեծ) թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց, պատեհ իմն համարեալ այսպէս անշարժ իւրոյ թագաւորութեանն լինել։ Եւ քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին, և սահմանս հատանէ նմա զմասն ինչ յարեւմտեայ Ասորւոց և զՊաղեստին և զԱսիա և զամենայն Միջերկրեայս և զԹիտալիա, ի ծովէն Պոնտոսի մինչև ի տեղին ուր Կաւկաս յարեւմտեանն յանգի ծով, և զԱտրպատական, և այլ որչափ միտք քո և քաջութիւն հատանեն. զի սահմանք քաջաց, ասէ, զէնն իւրեանց. որքան հատանէ՝ այնքան ունի։

Ահա այսօրիկ կը պատմէ Խորենացին, թէ ինչպէս Վաղարշակ ըզ-Մար Իբաս Կատինա, այր ուշիմ և վարժ քաղդէացի և յոյն գրոց, ղրկեց Հանդերձ նամակաւ առ Արշակ հանել Հայոց պատմութիւն ըզ Նինուէի դիւանէն, այլովքն հանդերձ։ (Տես էջ 92, 97)։

3. Երկրորդ դպրութեան մկիզբը Խորենացին նոյն պատմութիւնը կը կրկնէ այլազգ, սկսելով ի քաջէն Արշակայ, այն է յԱրշակայ առաջնոյ այսպէս. «Թէոս կոչուած Անտիոքոսի մետասաներորդ տարին (250) ապստամբեցան Պարթևք Մակեդոնացւոց ծառայութենէն. ուստի և թագաւորեց Արշակ քաջ, ի զաւակէ Աբրահամու ի Քետուրայ, որպէս զի հաստատուի բան Տեառն առ Աբրահամ՝ թէ թագաւորք ազգաց ի քէն ելցեն։ Այսպէս վաթսուն ամաւ յետոյ քան զմահն Աղեքսանդրի (263) թագաւորեց Պարթևաց Արշակ քաջ ի քաղաքին Բահլ, յերկրին Քուշանաց, և սաստիկ պատերազմաւ տիրելով բոլոր արևելից՝ հալածեց զՄակեդոնացիս ի Բաբելոնէ. և լսելով զզօրանալն Հռոմայեցւոց ի վերայ արևմտից և ծովուն (Միջերկրականի), զառնուլ նոցա ոսկւոյ և արծաթոյ հանքերն Սպանիացիներէն, և նուաճելն զԳաղատացիս (Գաղղիացիս) և զԱսիացիս (զՍելևկեանս)՝ ի ձեռն պատգամաւորաց խնդրեց ի նոցանէ զաշամբ խոստանալ՝ չօգնել Մակեդոնացւոց (Սելևկեանց), և ինքն կը խոստանար տալ նոցա ամի ամի հարիւր քանքար, ոչ իբրև հարկ, այլ իբրև ընծայ։ Այսպէս տիրեց (Արշակ Ա.) ամս երեսուն և մի. յետ նորա որդին Արտաշէս ամս քսան և վեց։ Սմա յաջորդեց որդին Արշակ մեծ, որ պատերազմեցաւ Դեմետրի և Անտիոքայ որդւոյն Անտիգոնոսի հետ. քանզի (Դեմետր) եկաւ ի վերայ

Մակեդոնացիս և նուաճելոյ զԲաբելոն և զարեւելս և զարեւմտեան Ասորեստանի՝ կը ժողվէ Վաղարշակ զօր բազում յԱտրպատականէ և ի բուն Հայոց, անուանի և քաջ մարդիկ, զԲագարատ և զորս ընդ նմայն էին, զընտրեալս առ ծովակաւն Գեղամայ, ի Քանանացւոց ի ծննդոց Շարայի և Գուշարայ, զՍիսակեանս, զԿադմեանս և ի մերձաւորաց նոցա, որպէս թէ Հայաստանի կէսը: Վաղարշակ այս ամենայն բազմութեամբ կու գայ ի միջոց աշխարհիս (Արտաշատուն նահանգը), մերձ յակունս Մօրին մեծի յափն Երասխայ, մօտ յԱրմաւիր, և երկայն ժամանակ կենալով անդ՝ կը կրթէ զօրքը: Այսպէս Վաղարշակ միաբանելով բոլոր Հայաստան՝ կ'երթայ անտի Խաղտեաց կողմերը: Ղօզիկա (Լազք), Պոնտոս, Փռիւգիա, Կապադովկիա և այլ (գաւառք Փոքուն Ասիոյ) չգիտելով զփորձ պատերազմին Արշակայ՝ հաստատուն կը պահէին զդաշինս միաբանութեան ընդ Սելեւկեանս: Ուստի Մորփիւղիկէս անոն միաբանելով այն (Փոքուն Ասիոյ) կողմերը՝ կը գրգռէ ի պատերազմ ընդ Վաղարշակայ: Երկոքին կողմանք կը պատահին միմեանց մօտ ի բլուր մի բարձր քարագագաթն, ի տեղւոջ որ այժմ (առ Խորենացւով) կոչի Կողոնիա, և բաւական հեռի ի միմեանց կը կենան երկոքին կողմանք աւուրս բազումս: Հուսկ ուրեմն կը գրգռէ պատերազմը մեր (Վաղարշակայ) կողմէն. ուստի Մորփիւղիկէս կամաւ թէ ակամայ ճակատ կազմելով կու գայ յանդուգն յարձակմամբ: Եւ զի էր սրտեայ, յաղթանդամ և ուժեղ, ամրացեալ պղնձի և երկաթի զրահիւք և ընտիր վառելովք՝ յերկիր կը կործանէր զոմանս ի քաջ և ընտիր զօրացն Վաղարշակայ, և կը ջանար զօրքը ճեղքելով հասանել մինչև յարքայն Հայոց: Արդարև յաջողեցաւ մօտ գալ և ձգել սուինը, և զի էր կորովի և երկայնաձիգ, որպէս հաւ սրաթև ի թռիչս՝ հեռու արձակեց զաշտէն, բայց Հայկայ և Ասորեստանւոյն Սենեքերիմայ զարմէն քաջ և անուանի մարդիկ աճապարեցին մտանել խռոց ի մէջ նորա և Վաղարշակայ, և հարեալ աշտէիւ սպանին զքաջն, և փախցնելով կոտորեցին զօրքը, այնպէս որ վտակք արեան իբրև զհեղեղս անձրևաց՝ կ'ոռոգանէին զերկիր: Այնուհետև խաղաղեցաւ երկիրն ընդ ձեռամբ Վաղարշակայ, և Սելևկեանք չիշխեցին այլ ևս տալ պատերազմ:

Յետ պատերազմին Արշակայ ընդ Մակեդոնացիս և առնելոյ զԲաբելոն և զարևելս և զարևմուտս Ասորեստանի՝ միաբանէ և Վաղարշակ զօր բազում յԱտրպատականէ և ի Հայոց, արս անուանիս և քաջս, և զկոչեցեալն Բագարատ և որ ընդ նմա քաջք, և զծովեզերեայսն մանկունս որք ի Գեղամայ, և ի Քանանացւոց, և Շարայի ծնունդք և Գուշարայ, և առ թեր Սիսակեանն և զԿադմեանն և զնոցա մերձաւորսն, որպէս թէ

զկէս մասն աշխարհիս։ Հասանէ ի միջոց աշխարհիս վերագոյն քան զակունս Մօրին մեծի յափն Երասխայ, մօտ յԱրմաւիրն, որ ասի բլուր, աւուրս չորս առնելով անդ, զի ոչ գիտէին զկարգս ինչ։ Եւ ապա միաբանեալ զբոլոր կողմ աշխարհիս՝ հասանէ առ սահմանօքն Խաղտեաց։ Քանզի Ղազիկայ, Պոնտոս, Փռիւգիա, Մաժաք և այլք, ոչ գիտելով զհամ պատերազմին Արշակայ՝ առ Մակեդոնացւոց պետութիւնն զմիաբանութիւն պաշտանցն հաստատուն պահէին։ Վասն որոյ ուրումն Մորփիւղիկեայ միաբանեալ զառաջեալ կողմանսն զայսոսիկ՝ գրգռէ ի պատերազմ ընդ Վաղարշակայ։ Բայց պատահեն միմեանց առ բարձրաւանդակի միով լեռով քարագագաթնիւ, որ այժմ ասի Կողոնիա, և մօտեալք ի միմեանս ձիգ ասպարիսօք միջոցացն՝ ամրանան երկոքին կողմանքն բովանդակ աւուրս։

Զկնի անցանելոյ բազում աւուրց ամրանալոյ կողմանցն երկոցունց՝ գրգռէ պատերազմ ի մերմէ կողմանէս դիմեալ. վասնորոյ յարդարէ կամաւ կամ ակամայ և Մորփիւղիկեան զիւրոյ կողման ճակատն, հասանէ յանդուգն յարձակմամբ։ Քանզի այր սրտեայ էր, և անդամովք երկար և ընդ թիկունս պատշաճ, զոյգ մարմնոյն և ոյժ սաստիկ ունելով, ամրացեալ պղնձով և երկաթով, և այլովք ընտիր վառելովք, ոչ սաստիկ ինչ թուով տապաստ յերկիր արկանէր արս ընտիրս և քաջս ի մանկանցն Վաղարշակայ, և ջանայր անցանել հասանել յարքայն Հայոց ի մէջ խմբի մեծի և զինու ամրացելոց։ Եւ մօտ անցեալ աջողեցաւ ձգել զուրինն. քանզի էր կորովի և երկայնաձիգ՝ հեռի զաշտէսն արձակեալ, որպէս ի թռիչս սրաթեւ հաւուց։ Այլ ոչ ինչ կարի յամեցին ընդ մէջ անցանել արք քաջք և անուանիք ի զարմից Հայկայ և Ասորեստանւոյն Անեքերիմայ. և աշտէիւ հարեալ սատակեն զքաջն. և զզօրսն առաջի արկեալ՝ ի փախուստ դարձուցանէին, բազում վտակս արեան հեղեալ, զերկիրն ողողանէին իբրեւ հեղեղք անձրեւաց։ Եւ յայնմ հետէ դադարեալ խաղաղէր երկիրն, նուաճեալ ընդ ձեռամբ Վաղարշակայ, և Մակեդոնացւոցն դադարեալ զօրն։

5. «Վաղարշակ, ասէ Խորենացին (Գիրք Բ. գլ. Զ.), յետ կարգելոյ Կապադովկիոյ, Պոնտոսի և Եգերացւոց կողմերը՝ դարձաւ ի Տայս առ ստորոտով Պարխարայ, երկիր անտառային, զէճ, մառախլուտ և լոռաւէտ, ուր լեռնայինն ու ջերմահոտը բարեխառնելով՝ պատրաստեց ամարանոց վասն իւր, և երկու անտառախիտ ռափարակ տեղեր հանդերձ լերամբք (պատելով որմով)՝ ելից էրէովք ի զբօսանս որսոց, իսկ Կողայ ջերմ գաւառը սահմանեց ի պէտս այգեաց և բուրաստանաց։ Ապա բարբարոս ազգաց, բնակելոց ի Հիւսիսոյ առ Կովկասաւ, պատուիրելով հրաժարել յաւազակութենէ և ի մարդադաւութենէ և հնազանդել արքունի հրամանաց և հարկաց՝ արձակեց իմաստուն վերակացուօք, և ինքն արձակելով արեւմտեան զօրքը՝ եկաւ ի խոտաւէտ տեղիս մօտ ի Շիրակ, և անտի, երբ օդն սկսաւ ցրտանալ՝ իջաւ դէպ ի հարաւ, ի տեղին

ուր Երասխ կը խառնի՝ ի Մեծամօր, և թողլով զօրս և քաղաքային պաշտօնեայս յիւրմէ՝ եկն ի Մծբին Հանդերձ աւագանւովն։

Այսպէս կատարեալ՝ կարգէ զկողմանս Մաժաքայ և զՊոնտացիս և զԵգերացիս, դառնայ առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց ի գեղջին և մառախղուտ տեղիս մայրացն և ի լոռաւէտս. գեղեցիկ իմն կարգելով զերկիրն, հաւասարելով զլեռնայինն և զջերմահոտն ի բարեխառն և ի ղուգագեղեցիկ վայելչութիւն, իւրոյ թագաւորութեանն ամառնային ժամանակին հովանոցս պատրաստելով, յորժամ զհիւսիսով երթիցէ։ Գաս զերկուս տափարակն անտառախիտս հանդերձ լերամբքն կազմելով որսոց տեղիս. և զջերմութիւնն Կողայ ի մարմանդս այգեաց և բուրաստանաց։ . . . Եւ կոչեցեալ զվայրենի եկամուտ ազգն որ ի դաշտին հիւսիսոյ և որ զստորոտով մեծի լերինն Կաւկասոյ, . . . պատուէր տալով զաւազակութիւն և զմարդադաւութիւն ի բաց քեցել յինքեանց, և հրամանաց և հարկաց արքունի հպատակ լինել . . . և արձակէ զնոսա հանդերձ արամբք իմաստնովք և վերակացուաք յիւրմէ։ Եւ ինքն արձակեալ զարմանեայ բազմութիւնն՝ իջանէ ի տեղիս խոտաւէտս մերձ ի սահմանն Տարոյի։ . . . Իսկ ի ցրտանալ հիւսիսոյ ի դառնաշոտ փչելոյ՝ խաղայ իջանէ ի դաշտն . . . ուր գետն մեծ . . . խառնի ի Մօրն մեծ։ Եւ անդ կարգեալ զզօրս աշխարհիս և թողեալ յինքենէ վերակացուս՝ իւր առեալ զամենայն զլխաւորսն չուէ ի Մծբին։

6. Ըստ Խորենացւոյն՝ Վաղարշակ յետ դառնալոյ ի Մծբին՝ նախ իւր տան և անձին օրէնք կը դնէ, սկսելով ի գլխոյն իւրմէ և ի թագէն։ Հրէից գաղթականութենէն (տես էջ 170) Բագարատ զոմն կը կարգէ թագադիր ասպետ, իբր փոխարէն միամիտ ծառայութեան նորա և քաջութեան, և զտոհմ նորա կ'անուանէ յանուն նորա Բագրատունի։ Ի գաղթականութենէ Քանանացւոց (տես էջ 166) կարգէ զգեցուցանողս իւր, և զտոհմն անուանէ Գնթունիս. ի զաւակէն Խոռայ Հայկազնոյ (տես էջ 147) զինեալ թիկնապահներ, Մաղխազ զոմն կարգելով գլուխ նոցա, բայց կը պահէ նախարարութեան հին անունը Խոռխոռունի։ ԶԴատ ոմն ի զաւակէ Գառնիկայ, թոռանէ Գեղամայ (տես էջ 101) կարգէ վերակացու որսոց. բայց ցեղ նորա յետոյ յանուն որդւոյ նորա Վարժայ կը կոչուի Վարաժնունի։ Գաբաղ ոմն կարգի ի վերայ կուտից (երամակաց?), և Աբեղ ոմն՝ սպասարար և գահաւոր (սենեկապետ), և ի սոցանէ ելլեն նախարարութիւնքն Աբեղեն և Գաբեղեն։ ԶԱրծրունիս գիտէ Խորենացին՝ ոչ արծրունիս, այլ *արծիւ ունիս*, վասն զի արծուիս (դրօշ արծուենշան?) կը կրէին առաջի նորա, և զԳնունիս գիտէ *գինի ունիս*, իբրև պատրաստողս ըմպելեաց թագաւորին. և որովհետև համեղ համեղ գինիները ըմպելին պատրաստողը կը կոչուէր Գին՝ այս

անուան զինի բառին հետ պատահական մերձաւորութենէն զուարճանալով Վաղարշակ՝ կարգեց և զնա ի թիւ մեծ նախարարութեանց։ Այս երկու տունք, Արծրունիք և Գնունիք, էին յորդւոց Սենեքերիմայ։

Խորենացին Սպանդունեաց, Հաւենունեաց և Ձիւնականաց անուններէն կը հետևցունէ, թէ առաջինքն կարգեալ էին ի վերայ զենարանաց, երկրորդքն՝ բազէակիր և բազէակալ, մանաւանդ զի սոքա կը բնակէին յանտառս, իսկ երրորդքն՝ ամարանոցաց պահակ և ձիւնակիր։

Վաղարշակ կը կարգէ հին թագաւորական զարմէն (Հայոց) չորս գունդ պահապան դրան արքունի, և կը հրամայէ նոյն հին թագաւորական զարմէն ներքինիներ խզել, և նահապետ կարգէ նոցա ըզՀայր ումն, իշխան մասին, որ յԱտրպատականէ մինչև Նախճաւան։

Նախ և առաջին օրինադրէ թագաւորն զինքն ու զտուն իւր, սկիզբն առնելով ի գլխոյն իւրմէ և ի թագէ։ Եւ զկոչեցեալն Բագարատ, որ ի Հրէից, շնորհակալութիւն նմա վասն յառաջագոյն անձնատուր ձեռընտուութեան առ թագաւորն և միամտութեանն և քաջութեանն՝ տայ նմա իշխել թագ ի գլուխ դնել թագաւորին, և կոչել թագադիր և ասպետ, և առանց ոսկւոյ և առանց ականց զկրասեր մարգարիտն երեքտակէն վարսակալ ածել՝ յորժամ յարքունիս և ի տան թագաւորին շրջիցի։

Եւ զդեռուցանողս իւր ի զաւակաց Քանանացւոց, անուն կոչէ ազգին Գնթունի։ Եւ թիկնապահս իւր, զինու հանդերձ, ի զաւակացն Խոռայ Հայկազնոյ՝ արս ընտիրս և քաջս, նիզակաւորս և սուսերաւորս և գլուխ նահապետ նոցա զՄաղխազ ումն. բայց անուն ազգին զնախնականն պահէ։ Իսկ զԴատ ի զաւակէ Գառնկայ որ ի Գեղամայ, ի վերայ որսոց արքունականաց կարգէ։ Որոյ որդի եղեալ Վարժ՝ յանուն նորա անուանի ազգն, բայց այս զկնի, յաւուրս Արտաշիսի։ Եւ զԳաբաղ ումն ի վերայ կուտից, և զԱբել՝ ապասարար և զահաւոր. և շէնս պարգևէ նոցա, յորոց և անուան կոչեն սաղէս և նախարարութիւնքն՝ Աբեղէն և Գաբեղէն։

Եւ զԱրծրունիսդ գիտեմ՝ ոչ արծրունիս, այլ արծիւ ունիս, որք արծուիս առաջի նորա կրէին։ . . . Գիտեմ զԳնունիսդ՝ գինի ունիս, որ առաջի թագաւորին պատրաստէր ըմպելիսն, որ աքանչելի իմն դիպեալ եղև ըստ գործոյն և անունն, քանզի (որ) պատրաստէր ըմպելիս արքայի յընտիր և համեղ գինեաց՝ ունէր և կոչումն անուանն Գին. ընդ որ զուարճացեալ, ասեն, Վաղարշակ՝ կարգէ ի թիւ նախարարութեան ազգաց մեծացելս։ Եւ են այս երկու տունքս ի զաւակէ Սենեքերիմայ, Արծրունիս և Գնունիս։

Ասեմ և զՍպանդունիսդ ի վերայ զենարանաց, և զՀաւենունիսդ՝ բազէակիրս և բազէակալս, յաղագս ի մայրիս բնակելոյ։ Եւ եթէ առ ցոփ ոչ ունիցիս՝ զՁիւնականդ ամարանոցաց պահակս և ձիւնակիրս։ Եւ գունդս պահապանս դրան արքունի պատրաստէ չորս, զմի մի բիւրաքանչիւր վառելովք, ի նոյն հին զարմից թագաւորացն որ ի Հայկայ . . . Նա և

ներքինիս հրամայէ ի նոյն ազգէ խզել, և նահապետ նոցա զՀայր իշխանն մասին յԱտրպատականէ մինչև ցՃուաշ և Նախճաւան։

7. Վաղարշակ, ասէ Խորենացին, «յետ կարգելոյ զտուն թագաւորին»՝ կու տայ նահապետի ազգին Մուրացան լինել «երկրորդ թագաւորութեան», թողլով նմա Մարաց գիւղերը։ Կը կարգէ նաև սահմանապահ իշխաններ. արևելեան սահմանին վրայ՝ երկու ցեղէց, Սիսակեանց և Կադմեանց նահապետները. հիւսիսային արևելեան սահմանին վրայ՝ Առան անուն զոմն հանճարեղ և մտացի, առ մեծ գետովն որ կոչի Կուր։ Այս Առան էր ի ծննդոց Սիսակայ, որ ժառանգեց (առ Հայկազամբք) Աղուանից դաշտը և այն դաշտին լեռնակողմը, յԵրասխայ մինչև ցամուրն Հնարակերտ։ Ի զաւակէ սորա (Առանայ) ասեն սերեալ Ուտէացւոց և Գարդմանացւոց և Ծոդէացւոց ազգը և Գարգարացւոց իշխանութիւնը։

Գուշարայ, որ էր յորդւոց Շարայի՝ ժառանգեց (ի Վաղարշակայ) Մթին կոչուած լեռը որ է Կանգարք, զկէս մասն Ջաւախաց, զԿողբ, զԾոբ և զՁոր մինչև ցամուրն Հնարակերտ։ Վաղարշակ այս Գուշարայ Հայկազնոյն սերունդէն կարգեց նաև Աշոցայ տէրութիւնը և զսեպհականութիւնն (տէրութիւն) Տաշրայ։ Իսկ Կովկասու գօտւոյն դէմ, իբրև կողմնակալ հիւսիսոյ կարգեց այս Գուշարայ մեծ և հզօր ազգը, և բդեշխ Գուգարացւոց անուանեց զնահապետ նոցա, որ էր ի զաւակէ Դարեհի նախարարին Միհրդատայ, զոր Աղեքսանդրի կացուցեալ էր 'իշխան ի վերայ գերութեան, զոր Նաբուգոդոնոսոր բերած էր Իբերիոյ ազգերէն, ինչպէս կը պատմէ Աբիւդենոս. Մեծազօրն Նաբուգոդոնոսոր բռնագոյն էր քան զՀերակղէս. Լիբէացիներէն (Ափրիկէ) զօրք ժողվելով գնաց Իբերացւոց (Սպանիոյ) երկիրը, և տիրելով նոցա՝ զմասն մի ի նոցանէ բերաւ բնակեցուց յաջակողմն Պոնտոսի։

Վաղարշակ հաստատեց նաև Որդունի կոչուած նահապետութիւնն ի մեծի հովտին Բասենոյ, ի զաւակաց Հայկայ։ Եւ զոմն Տորք անուն ի զաւակէ Թոռին Հայկակայ, ի Պասքամայ, այր տգեղ, յաղթանդամ և դժնեայ, որ վասն ժահադիմութեանն կը կոչուէր անգեղեայ՝ հաստատեց կուսակալ արևմտից, և ցեղին անունը կոչեց Անգեղ տուն։ Յետ սորա հաստատեց Վաղարշակ Ծոփաց նահապետութիւնն ի Չորրորդ Հայս. զնախարարութիւնն Ապահունեաց, զՄանաւազեանն և զԲզնունեանն նոյնպէս ի զաւակաց Հայկայ, երկրին բնակիչներէն երևելի մարդիկ նահապետ կարգելով, և զգաւառսն կոչեց յանուն ցեղիցն։

Եւ Սլաք անուն զոմն այր դժնեայ, որ չէ յայտ թէ ի Հայկայ

էր եթէ ի հնագոյն բնակչաց քան զնա, ըստ հին գրուցաց (Խոր. Բ. Ը.), կարգեց սակաւ արամբք պահել լեռը և որսալ քօշս։ Սոքա անուանեցան Սղկունիք։ Ի նոյն պաշտօն կարգեց նաև զանպարտելին Միանդակ, յորմէ են Մանդակունիք։

Իսկ յորդւոց Վահագնի գտաւ զոմանս, որ ինքնակամ յանձն առին լինել պաշտօնեայ մեհենից։ Զսոսա պատուեց Վաղարշակ մեծապէս, յանձնելով նոցա զքրմութիւնն, և Վահունի անուամբ կարգեց զնոսա ի թիւ առաջին նախարարութեանց։ Նոյնպէս զԱռաւենեանսն (Խոր. Գ. ԽԳ.) և զԶարեհաւանեանս, առաջին թագաւորաց զարմէն (Խոր. Ա. ԼԱ.), կարգեց համանուն քաղաքաց վրայ։

Եւ զՇարաշան ումն ի տանէ Սանասարայ կարգեց բդեշխ մեծ և կուսակալ յարևմտից հարաւոյ, ի վերայ սահմանացն Ասորեստանի (Ասորւոց), յափն Տիգրիս գետոյ, պարգևելով նմա զԱրձն և որ շուրջ զնովաւ գաւառս, և Տաւրոս լեռը, ուր է Սիմ, և զբոլոր Խոր Ասորիս։

Իսկ ի Մոկաց գաւառէն գտնելով մոկացի մը, որ ունէր ընդ իւրև շատ սրիկաներ՝ հաստատեց նախարարութիւն. նոյնպէս Կորդուաց, Անձևացեաց և Ակէացւոց նախարարութիւններն, նոյն գաւառներէն մարդիկ նահապետ կարգելով նոցա։ Իսկ զՌշտունեաց և զԳողթնեցւոց պատմի, թէ եկած էին գաղթական ի Սիսականէն, բայց չեմ գիտեր թէ գաղթականք ունէին այս անունները, թէ գաւառաց հին անուամբ կոչեցան այսպէս։

Յետ կարգելոյ զտուն Թագաւորին՝ երկրորդ Թագաւորութեանն լինէր ի զաւակէ Աժդահակայ, Մարաց եղելոյ Թագաւորի, որ այժմ Մուրացանդ կոչեն։ Քանզի ոչ ասեն նահապետի ազգին՝ Մուրացան տէր, այլ Մարացւոցն տէր։ Եւ թողու ի վերայ նորա զամենայն չէնս որ ի գերութենէն Մարաց։ Եւ յարևելից կողմանէ զեզերբ հայկական խօսից կողմնակալս, զերկու ցեղից նահապետութեանցն՝ Սիսակեան և Կադմեայն։

Յետ սորա մեծ և անուանի և բազմարիւր զարևելից հիւսիոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն՝ զայր անուանի և յամենայն գործ մտաւորութեան և հանճարոյ առաջին, զԱռան, առ մեծ գետովն, որ հատանէ զդաշտն մեծ, որ անուանի Կուր։ Բայց զայս գիտեա, զի զցեղս զայս մեծ և անուանի՝ մոռացումն եղև մեզ յառաջին մատենին յիշատակել, զզունդս Սիսական, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից և զլեռնակողմն նորին դաշտի, ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն, որ ասի Հնարակերտ, և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցաւ Աղուանք, զի աղու ձայնէին զնա։ Եւ ի սորա ծննդոց այս Առան անուանի և քաջ՝ կարգեցաւ ի պարթևէն Վաղարշակայ կողմնակալ բիւրաւոր։ Ի սորա զաւակէ ասեն սերեալ զազգ Ուտէացւոց և Գարդմանացւոց և Ծովդէացւոց և Գարգարացւոց իշխանութիւնն։

Իսկ Գուշարայ, որ յորդւոցն Շարայի՝ ժառանգեաց զլեառն Մթին, որ է Կանգարք, և կէս մասինն Ջաւախաց, զԿողբ, զԾոբ, զՁոր մինչև ցա-

մուքն Հնարակերտ։ Բայց զտէրութիւնն Աշոցայ և զանդճականութիւնն Տաշրայ՝ կարգէ Վաղարշակ ի զաւակացն Գուշարայ Հայկազնոյ։ Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ կողմնակալ հիւսիսոյ կարգէ զմեծ և զհզօր ազգն (Գուգարաց). և նահապետութեանն անուն կարդայ բդեշխ Գուգարացւոց, որ էր լեալ ի զաւակէ Միհրդատայ Դարեհի նախարարի, զոր ածեալ Աղեքսանդրի, թողեալ իշխան ի վերայ գերութեան ի Վերիացւոց ազգացն, զորս էած Նաբուգոդոնոսոր, որպէս Աբիւդենոս պատմէ այսպէս ասելով. Մեծազօրն Նաբուգոդոնոսոր բռնագոյն էր քան զՀերակլէս. ի Լիբիացւոց զօրաժողով լեալ՝ հասանէր ի Վերիացւոց աշխարհն, և վանեալ խորտակեալ ընդ ձեռամբ նուաճէր. և զմասն մի ի նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովու յարևմուտս տարեալ բնակեցուցանէր։

Իսկ ի հովտին մեծի Բասենոյ կարգէ նահապետութիւն զՈրդունին անուանեալ, որ ի զաւակացն Հայկայ։ Իսկ զայր խոժոռադէմ և բարձր և կողոպտարանձն և տափաքիթ, խորակն և դժնահայեաց, ի զաւակէ Պասքամայ, ի Հայկակայ թոռանէ, Տորք անուն կոչեցեալ, որ վասն առաւել ժահադիմութեանն ձայնէին անգեղեայ, վիթխարի հասակաւ և ուժով հաստատէ կուսակալ արևմտից. և յերեսացն անպիտանութեանէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն։

Բայց զկնի դորա հաստատէ զմեծ նահապետութիւնն Ծոփաց ի Չորրորդն կոչեցեալ Հայս։ Այլև զնախարարութիւնն Ապահունեաց և զՄանաւազեանն և զԲզնունեանն ի նոյն զաւակացն Հայկայ. ի բնակչաց գտեալ պերճագոյն՝ տեարս կարգէ, յանուն շինից և գաւառաց կոչելով։

Այլ մոռացաք և զդժնեայ Սլաքն անուանեալ այր, զոր ոչ կարեմ հաւաստեաւ ասել, ի Հայկայ եթէ յառաջագունից քան զնա եղելոց յաշխարհիս, զոր հին զրոյցքն պատմեն լինել. բայց էր այր քաջ։ Զսա կարգէ սակաւ արամբք պահել զլեառնն, որսալ զքօշսն. որք անուանեցան Սղկունիք։ Այսպէս և ի նոյն իրս և զՄիանդակն անդառնալի. և ի սմանէ Մանդակունիք։

Բայց յորդւոցն Վահագնի գտեալ արս, որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս՝ պատուէ մեծապէս, ի ձեռն տալով նոցա զքրմութիւնն. և կարգէ ընդ առաջին նախարարութիւնսն. և անուն կոչէ Վահունիս։ Նոյնպէս և զԱռաւենեանն և զԶարեհաւանեանն գտեալ ի զարմից առաջին թագաւորացն՝ կարգէ ի նոյնանուանս աւանս։

Եւ զՇարաշան ի տանէ Սանասարայ հաստատէ բդեշխ մեծ և կուսակալ յարևմտից հարաւոյ, յեզեր սահմանացն Ասորեստանի, առ ափն Տիգրիս գետոյ. գաւառս պարգևելով զԱրձն, որ շուրջ զնովաւ, և զլեառն Տաւրոս, ուր և Սիմ, և զԿղեսուրն ամենայն։ Իսկ զՄոկացին ի նոյն գաւառէ գտեալ այր, որ ունէր ընդ իւրեաւ սրիկայս բազում՝ նախարարութիւնս հաստատէ։ Նոյնպէս և զԿորդուացիս, զԱնձևացիս, զԱկէացիս ի նոյն գաւառաց։ Իսկ զՌշտունիս և զԳողթնեցիս գտի պատմեալ ի Սիսականէն արդարև հատուած. ոչ գիտեմ թէ յանուն արանցն զգաւառն անուանեն, և թէ յանուն գաւառացն զնախարարութիւնսն կոչեցեալ։

Վաղարշակ, ըստ Խորենացւոյն, կը շինէ մեհեան յԱրմաւիր, կանգնելով «անդրիս արեգական և լուսնի և իւրոց նախնեացն»։ Կը հրամայէ նորոգել Շամիրամայ քաղաքը (տես էջ 15—23), և «յայլ

բազում տեղիս շինել քաղաքս բազմաբնակս, և շէնս գլխաւորս և մարգախիտս»:

**Ց.** Ըստ Խորենացւոյն՝ Վաղարշակ իմաստուն օրէնսդիր էր: Ցարքունիս իւր «ժամս որոշէ ելևմտից (ունկնդրութեան, audience), խորհրդոց, խրախճանութեանց (կերակրոյ) և զբօսանաց: Եւ յիշեցուցանողս երկուս ի ձեռն գրոյ», մին՝ բարւոյ, և միւսը՝ վրէժխնդրութեան. «բարւոյ յիշեցուցանողին հրաման տայ ի բարկութեան արքայի և յանիրաւ հրամանս՝ յիշեցուցանել զիրաւն և զմարդասիրելն»:

Վաղարշակ հաստատեց, ըստ Խորենացւոյն զինուորական պատուոյ աստիճաններ. «կարգս զինուորութեանց, առաջինս և երկրորդս և երրորդս և որ ի կարգին». նաև «իրաւարարս ի տան արքունի, իրաւարարս ի քաղաքս և յաւանս»: «Հրաման տայ քաղաքացեաց մարդկան արգոյ լինել քան զգեղջկաց . . . և քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարել, վասն բարեկարգութեան և աննախանձոտ կենաց, որ է շինութեան և խաղաղութեան կենաց պատճառք»:

**9.** Վաղարշակ «բազում ունէր ուստերս», ասէ Խորենացին, և «պատշաճ վարկաւ՝ ոչ ամենեցուն առ իւր կալ ի Մծբին»: Երեց որդին զԱրշակ միայն պահեց առ իւր «ի համար թագաւորութեան», և զթոռն իւր Արտաշէս, զոր շատ կը սիրէր, «քանզի էր արդարև ողայն կայտառ և հզօր մարմնով». մնացեալները ղրկեց Հաշտենից կողմերն, առանձին մուտ և ռոճիկ սահմանելով նոցա յարքունուստ: «Եւ եղև այս—կը յաւելու Խորենացին—«յայնմ հետէ և առյապայ օրէնք ի մէջ Արշակունեաց, միոյ որդւոյ բնակել ընդ արքայի՝ փոխանորդ լինել թագաւորութեանն, և այլ ուստերաց և դստերաց գնալ ի կողմանս Հաշտենից», որ այն ազգին (Արշակունեաց) ժառանգութիւն էին:

«Ցետ այսպիսի օրութեանց և բարեկարգութեանց, ասէ Խորենացին, մեռանի Վաղարշակ ի Մծբին, թագաւորեալ ամս քսան և երկու», այսինքն, ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն՝ 166—144, կամ 153—131 նախ քան զՔրիստոս:

**10.** Ըստ Խորենացւոյն՝ Վաղարշակայ յաջորդելով որդին Արշակ՝ կը թագաւորէ ամս երեքտասան, այսինքն 144—131 կամ 131—118 նախ քան քՔր.: ԶԱրշակայ այսչափ միայն ասէ Խորենացին, թէ եղաւ «նախանձաւոր և հետևող հայրենի առաքինութեանցն», և թէ «բազում կարգս ուղղութեանց գործեաց»: Արշակ, ըստ Խորենացւոյն, մեծամեծ քաջութիւններ գործած էր Փոքուն Ասիոյ կողմերը. քանզի կը յաւելու Խորենացին, թէ Արշակ պատերազմեցաւ

ընդ Պոնտացիս, և ի նշան քաջութեան իւրոյ կոթող կանգնելով յեզեր Սեաւ ծովուն՝ իւր բոլորատէգ (միակտուր) թունաւոր նիզակն այնպէս ուժով նետեց ի հետևակուց, որ նիզակը մնաց ի կոթողին։ Զայս արձան (քար), ասէ Խորենացին, պատուեցին Պոնտացիք երկար ժամանակ իբրև աստուածային գործ, բայց «ի գոռալն Արտաշիսի (որդւոյ Արշակայ) միւսանգամ ընդ Պոնտացիս՝ ընկեցեալ ասեն զարձանն ի ծով»։

Այս Արշակայ ժամանակ, ըստ Խորենացւոյն, Բուլկար գաղթականներ Կովկասու կողմերէն գալով ի Հայս՝ բնակեցան Տայոց Կող գաւառը, «յարգաւանդ և ի հացաւէտ տեղիս»։

Ըստ Խորենացւոյն՝ հոս կը վերջանար Մար Իբասայ պատմութիւնը։

Արշակ որդի Վաղարշակայ թագաւորէ ի վերայ Հայոց ամս երկոտասան։ Նախանձաւոր և հեռաւոր հայրենի առաքինութեանցն լեալ՝ բազում կարգս ուղղութեանց դործեաց. պատերազմելով ընդ Պոնտացիս, և նշանակ եթող յեզեր ծովուն մեծի զնիզակն իւր զբոլորատէգ, որ էր-արեամբ զեռնոց մխեալ, ձգեալ ի հետևակուց՝ խորագոյնս նստոյց յերկանաքար արձանին, զոր կանգնեաց ի ծովեզերն։ Զայս արձան բազում ժամանակս պատուեցին Պոնտացիք որպէս զառ ի յաստուածոց գործ։ Իսկ ի գոռալն Արտաշիսի միւսանգամ ընդ Պոնտացիս՝ ընկեցեալ ասեն զարձանն ի ծով։

Ի սորա աւուրս աղմուկ մեծ լեալ ի գօտիս մեծի լերինն Կաւկասու յաշխարհին Բուլղարաց, և բազումք ի նոցանէ հատուածեալք եկին յաշխարհս մեր, և բնակեցան ներքոյ Կողայ, յարգաւանդ և ի հացաւէտ տեղիս բազում ժամանակս։

Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Իբաս Կատինայ։

**11.** Խորենացին Արշակայ յաջորդել կու տայ զորդի նորա զԱրտաշէս, որոյ պատմութիւնը որպէս թէ կ'առնու ի հինգերորդ գրոցն Ափրիկանոսի, որ թարգմանեց կամ օրինակեց, «փոխադրեաց», ասէ Խորենացին, ինչ որ զթագաւորաց Հայոց կը պատմուէր Եդեսիոյ դիւանին գրուածներուն մէջ, ի քարտէսս դիւանին Եդեսիոյ»։ Այս գրուածք կամ քարտէսք, ըստ Խորենացւոյն, «ի Մծբնայ հոն փոխուած էին»։ Ափրիկանոս, ըստ Խորենացւոյն, առած էր նաև «Պոնտոսի Սինոպ քաղաքին մեհենական պատմութիւններէն»։ «Թող չտարակուսի ոք», կը յաւելու Խորենացին. քանզի մեք իսկ ականատես եղանք այն դիւանին։ Եւ վկայ է նաև Եւսեբի Կեսարացւոյ եկեղեցական պատմութիւնն, զոր թարգմանել տուաւ ի հայ լեզու երանելին Մաշտոց։ Եթէ կամիս (ասէ Խորենացին զՍահակ Բագրատունի)՝ խնդրել տուր Սիւնեաց Գեղարքունի գաւառը, պիտի գտնես առաջին հազներգութեան (դպրութեան) յերեքտասաներորդ թուին, թէ մեր առաջին թագաւորաց բոլոր գործերը

*մինչեւ ցԱբգար, եւ յետ Աբգարու մինչեւ ցԵրուանդ՝ կան ի դիւանին Եդեսիոյ։ Եւ կարծեմ տակաւին կը գտնուին պահուած ի նմին քաղաքի»։*

Սկիզբն արասցուք պատմել ի հինգերորդ գրոցն Ափրիկանոսի ժամանակագրի . . . քանզի նա բովանդակ փոխագրեաց որ ինչ ի քարտէսս դիւանին Եդեսիայ, որ է Ուռհայ, որ յաղագս թագաւորացն մերոց պատմէր. որ մատեանքն ի Մծբնայ էին փոխեալ անդր, և ի Սինոպայ Պոնտոսէ ի մեհենական պատմութեանցն։ Մի ոք անհաւատասցի, քանզի մեզէն իսկ ականատես եղաք այն դիւանին։ Եւ վկայ քեզ ի մօտոյ երաշխաւորեսցէ Եկղեսիաստէ գիրք Եւսեբի Կեսարացւոյ, զոր եւ թարգմանել երանելի վարդապետն Մաշտոց ի հայ լեզու։ Խնդիր արասցես ի Գեղաքունի ի գաւառին Սիւնեաց, և գտցես յառաջին հազներգութեանն յերեքտասաներորդ թուին, զի վկայէ յԵդեսիայ դիւանին լինել ամենայն գործոց առաջին թագաւորացն մերոց մինչև ցԱբգար, և զկնի Աբգարու մինչև ցԵրուանդ։ Որ այժմ կարծեմ գտանի պահեալ ի նոյն քաղաքի։

**12**. *Այսպէս Խորենացին, ըստ իւրում վկայութեան՝ Ափրիկանոսի միջոցաւ յԵդեսիոյ դիւանէն առնլով կը պատմէ զԱրտաշիսէ օրինակ զայս. «Արտաշէս թագաւորեց Հայոց փոխանակ Արշակայ հօր իւրոյ, Պարսից թագաւորին Արշականայ քսան և չորրորդ տարին* (131—106 *կամ* 118—93), *և յառաջադէմ լեալ՝ կամեցաւ լինել առաջին և ոչ երկրորդ յետ Պարթևաց, և Արշական հաւանելով յանձն առաւ տալ նմա նախագահութիւնը. վասն զի հպարտ և պատերազմասէր էր Արտաշէս, շինեց իւր արքունիս յերկրին Պարսից, եւ հարկանել դրամ իւր պատկերով, և զԱրշական արար ընդ իւրով իշխանութեամբ թագաւոր Պարսից, և զՏիգրան զորդին իւր՝ Հայոց . . . Արտաշէս տուաւ զդուստր իւր զԱրտաշամա կին Միհրդատ անուն ումեմն, որ բդեշխ էր Վրաց . . . , և յանձնեց նմա Հիւսիսային լերանց (Կովկասու) և Պոնտոս ծովուն կողմնակալութիւնը։*

**13**. *Այնուհետև Արտաշէս ժողվեց զօրք յարևելից և ի հիւսիսոյ այնչափ՝ մինչև չգիտել զհամար նոցա, բայց ի նշան բազմութեանն քար դիզել կու տար ըստ մարդաթուի յանցս և յիջևանս։ Այսպիսի մեծ բազմութեամբ խաղալով Արտաշէս յարևմուտս՝ արար ձերբակալ զԿրիւսոս թագաւոր Լիւդացւոց։ Եւ գտնելով յԱսիա Արտեմեայ, Հերակլի և Ապողոնի պղնձաձոյլ ոսկեզօծ անդրիս (արձան)՝ զրկեց ի Հայս, կանգնել յԱրմաւիր։ Նոյնպէս Դիոսի, Արտեմեայ, Աթենասայ, Հեփեստոսի և Ափրոդիտեայ անդրիներն առնլով ի Յունաց՝ բերել տուաւ ի Հայս։*

Արտաշէս տիրելով ցամաքին, որ է մէջ երկուց ծովուց (Միջերկրականին և Սեաւ ծովուն, այսինքն Փոքուն Ասիոյ)՝ լցոյց զՈվկիանոս (Միջերկրականը) բազմութեամբ նաւաց, կամելով ծառայեցնել բոլոր արևմուտք. և ոչ ոք ընդդիմացաւ նմա, քանզի Հռոմայեցիք էին յայնժամ ի մեծի յուզման։ Բայց չգիտեմ, ասէ Խորենացին, ինչ պատճառաւ խռովութիւն մեծ յարեաւ ի բանակին, այնպէս որ զօրքն սկսան զիրար կոտորել, և Արտաշէս սպանաւ ի փախստեան իւր զօրքէն ի քսան և հինգերորդ ամի թագաւորութեան իւրոյ։

Արտաշէս թագաւորէ Հայոց փոխանակ Արշակայ հօր իւրոյ ի քսան և ի չորրորդ ամի Արշականայ Պարսից արքայի. և յառաջադէմ եղեալ՝ ոչ զերկրորդականն ունի գահ, այլ զաւագութեան թեկն ածէ. որում հաւանեալ յանձն առնու Արշական տալ նմա զնախագահութիւնն։ Քանզի էր այր հպարտ և պատերազմասէր. որ և արքունիս իւր ի Պարսից աշխարհին շինեաց, և դրամ առանձին զիւր պատկերն հարկանէր. և զԱրշական ընդ իւրով ձեռամբ կացուցանէր թագաւոր Պարսից, որպէս զՏիգրան որդի իւր՝ Հայոց։ . . . Բայց զդուստր իւր զԱրտաշամայ տայ կին Միհրդատայ ումեմն Վրաց բդեշխի մեծի, . . . և հաւատայ սմա զկողմնակալութիւն հիւսիսային լերանցն և Պոնտոս ծովուն։

Ցայնժամ հրաման տայ Արտաշէս զօր յարուցանել յարևմտից և ի հիւսիսոյ բազում յոյժ, մինչև ոչ գիտել նմա զհամարն, այլ յանցս և յիջևանս քար ըստ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեանն թողուլ։ Խաղայ յարևմուտս, և ձերբակալ արարեալ զԿրիւսոս թագաւոր Լիւդացւոց։

Եւ գտեալ յԱսիայ պղնձաձոյլ ոսկէզօծ պատկերս զԱրտեմիդեայ և զՀերակլեայ և զԱպողոնի՝ տայ բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր։ . . . Բայց և յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդայ, զԱթենայ, զԵփեստոս, զԱփրոդիտեայ՝ տայ բերել ի Հայս։

Բայց Արտաշիսի նուաճեալ զցամաքս միջոցաց ծովուցն երկոցուն՝ լնու զՈվկիանոս բազմութեամբ նաւաց, ծառայեցուցանել կամելով զբոլոր արևմուտս։ Քանզի մեծ յոյզք խռովութեան եղեալ ի Հռովմէ՝ ոչ ոք ընդդիմանայ նմա հզօրապէս։ Այլ ոչ գիտեմ ասել յորպիսի ազդմանէ, տհազգին իմն աղմուկ լեալ չփոթից՝ բազմութեան զօրացն զմիմեանս կոտորեալ. իսկ Արտաշէս փախուցեալ մեռանի, որպէս ասեն՝ յիւրոց զօրաց, թագաւորեալ ամս քսան և հինգ։

**14.** Խորենացին հաստատելու համար Արտաշիսի ձերբակալելն զԿրիւսոս՝ կը յիշէ յոյն պատմագիրներ։ Զայս, ասէ, կը յիշեն պատմագիրք Յունաց, ոչ մի ոք այլ բազումք. ուստի տարակուսելով եղաք ի խնդիր։ Քանզի լսած էաք ի պատմութենէ ոմանց, թէ Կիւրոս սպաննելով զԿրիւսոս՝ եբարձ Լիւդացւոց թագաւորութիւնը։ Բայց որովհետև շատերը կը պատմեն հաւաստեաւ, թէ Արտաշէս բռնեց զԿրիւսոս՝ ես կը հաւատամ։ Պողիկրատէս ասէ.

Ըստ իս քան զՄակեդոնացին Աղեքսանդր մեծ է Արտաշէս, քանզի սա առանց ելանելոյ իւր երկրէն՝ իշխեց Թէբէի և Բաբելոնի, և առանց անցանելոյ ընդ Ալիւս գետ՝ սատակեց լիւդական զօրքը և կալաւ զԿրիւսոս, և յառաջ քան զհասանելն յԱսիա՝ Ատտիկէի դղեկին մէջ հռչակեցաւ։ Աւա՜ղ բախտին, իցէ՛ թէ իւր տէրութեան մէջ մնանէր, և ոչ ի փախստեան։

Սմին նման կը պատմէ Եւագարոս. Աղեքսանդրի և Դարեհի պատերազմը փոքր է առ պատերազմաւ Արտաշիսի. քանզի ի պատերազմին նոցա փոշին կը մթացունէր տուընջեան լոյսը, իսկ սա նետաձգութեամբ ծածկեց և խաւարեցոյց արևը, առնելով ձեռագործ գիշեր ի միջօրէի։ Արտաշէս չթողուց փախստեայ, որ գոյժ տանէր Լիւդացւոց, այլ բռնելով զթագաւոր նոցա Կրիւսոս՝ հրամայեց դնել ի տապակի։ Զօրք սորա այնչափ էին, մինչև արբմամբ նուազեցնել զջուր գետոյն, զոր ձմեռնային հեղեղք չկրցան ստուարացնել; և ոչ թիւք բաւական էին համարել զզօրս նորա, ուստի և հարկ եղաւ չափ գործածել քան թիւ։ Բայց Արտաշէս փոխանակ հպարտանալոյ՝ արտասուեց ասելով. Աւա՜ղ փառացս անցաւորի։

Կամադրոս կը գրէ. Հպարտ Լիւդացիք խաբուեցան Պիւթեայ հարցկէն պատասխանէն առ Կրիւսոս, թէ Կրիւսոս Ալիւս գետ անցնելով՝ պիտի քակէ իշխանութիւնը։ Լիւդացիք կարծեցին, թէ Կրիւսոս օտար իշխանութիւն պիտի քակէր, բայց քակեց զիւրն, քանզի Արտաշէս Պարթև բռնելով զԿրիւսոս հանեց զնա ի տապակ. իսկ Կրիւսոս յիշելով զբան Սողոնի Աթենացւոյ՝ ասէ իւրով լեզուաւ. Ո՜վ Սողոն, Սողոն, գեղեցիկ խօսեցար մարդոց բարեբախտութեան երանի չտալ մինչև ցվախճան։ Արտաշիսի մարդիկը լսելով զբան Կրիւսոսի՝ պատմեցին թագաւորին, թէ Կրիւսոս կը կոչէ նոր ոմն Աստուած։ Արտաշէս գթալով հրամայեց ածել զԿրիւսոս առաջի իւր, և իմանալով թէ զինչ էին բանք Կրիւսոսի՝ հրամայեց չտանջել զնա։

Իսկ Փղեգոնիոս կը գրէ. Քան զայլ ամենայն թագաւորս հզօր էր Արտաշէս Պարթև, որ ոչ միայն Լիւդացւոց յաղթելով կապեց զԿրիւսոս, այլ և փոխեց զբնութիւն տարերաց ի Հելլեսպոնտոս և ի Թրակիա, զցամաք ի ծով, և զծով ի ցամաք փոխելով։ Թեսաղացւոց սպառնացաւ, և համբաւն հիացոյց զՀելլենացիս։ ԶԼակեդեմոնացիս կործանեաց, զՓոկէացիս փախոյց, Ղովկրացիք անձնատուր եղան, Բէովտացիք հպատակեցան նմա, բոլոր Յունաստան հարկեցաւ նմա առ ահին։ Բայց յետ սակաւուց մեծ եղաւ յոյժ դժբախտութիւն նորա։ Ոչ այնչափ թշուառացաւ Կիւրոս ի պատերազմին Մազքթաց, ոչ Դարեհ՝ ի կռուին ընդ Սկիւթացիս, և ոչ Կամբիւսէս՝ ընդ Եթովպացիս։ Փոքր էր նաև Քսերքսի արշաւանքն ի Յոյնս,

ուր զգանձ և զկրան իւր թողեալ փախեաւ մեծափառն։ Իսկ նա ՚ի հեռ-կանեալն յաղթութեանց՝ խնդակցեալ իւր զօրքն։

Զայս տեսցեալ պատմագրացն Յունաց, ոչ միոյ կամ երկուց, այլ բազմաց. ընդ որ տարակուսեալ մեր՝ բազում խոյզ խնդրոյ արարաք։ Քանզի լուաք ի պատմութեանց ոմանց՝ Կիւրոսի սպանեալ զԿրիւսոս, և բարձեալ զթագաւորութիւնն Լիւդեացւոց։ . . . Բայց քանզի բազումք են որ ասեն զԿրիւսոս մերոյ Արտաշիսի կալեալ, և ոճով իմն պատմեն՝ ես հաւանիմ։ Քանզի ասէ Պողիկրատէս այսպէս. Վեհ իմն Արտաշէս Պարթև քան զՄակեդոնացին Աղեքսանդր, զի կալով յիւրում աշխար-հին՝ իշխեաց Թեբայ և Բաբելոնի, և չև ընդ Ալիւս գետ անցեալ՝ զԼիւդականն սատակեաց զզօրս և կալաւ զԿրիւսոս. և յառաջ քան յԱսիայ հասանելն՝ յԵտտիկէ դղեկին քարոզեցաւ։ Աւա՛ղ բախտին. միայն թէ ի տէրութեանն և ոչ ի փախստեան էր վախճանեալ։

Համգոյն դմին ասէ Եւագարոս. Փոքր Աղեքսանդրի և Դարեհի պա-տերազմն առ Արտաշիսին բաղդատեալ. քանզի նոցայն ոչ ի փոշւոյն մա-քուր երևէր լոյս տուընջեանն, այլ սա ծածկեաց նետաձգութեամբն և սուսերացոյց զարեգակն, ձեռագործ գիշեր զմիջօրէիւ արարեալ։ Ոչ փա-խստեայ համբաւաբեր Լիւդացւոցն թողեալ, այլ և զթագաւորն նոցին զԿրիւսոս ի տապակի հրամայեաց կացուցանել։ Վասն որոյ և ոչ ուղխք կչեռն սատուարացուցին, արիամբն ի ձմեռնային նուազութիւն իջուցա-նելով. վասն զի և զթուոյն նոցոյ անկար՝ բազմութեամբ զօրացն, մինչ զի չափոյ պէտք եղեն առնուլ քան զհամարոյ։ Ընդ այս ոչ հպարտա-ցեալ, այլ արտասուեաց ասելով. Աւա՜ղ փառացս անցաւորի։

Գրէ և Կամադրոս այսպէս. Խարկանք լինէին հպարտացելոցն Լիւ-դացւոց՝ Կրիւսեայ Պիւթիայ հարցուկն պատասխանելով. Կրիւսոս ան-ցեալ ընդ Ալիւս գետ՝ քակեսցէ զիշխանութիւնս։ Զոր նորա օտարաց կարծեցեալ՝ զինքն քակէ. քանզի կալեալ զնա Պարթևին Արտաշիսի, հրամայեաց հանել յերկաթեղէն տապակի։ Իսկ Կրիւսոսի յիշեալ զբան Սողոնի Աթենացւոյ՝ ասէ յիւր լեզուն. Ո՜վ Սողոն, Սողոն, գեղեցիկ բարբառեցար, ոչ երանել զբարեբախտութիւն մարդոյ մինչև ցվախճան։ Եւ լուեալ որ մերձն կային՝ պատմեցին Արտաշիսի, եթէ զնոր ոմն Աստ-ուած կարդայ Կրիւսոս։ Եւ հարցեալ և ուսեալ Արտաշիսի, թէ զինչ է որ աղաղակեացն՝ հրամայեաց ներել զտանջանսն։

Գրէ և Փղեգոնիոս. Ամենայն թագաւորաց հզօրն եղեալ Պարթևն Արտաշէս, և ոչ միայն զԼիւդացիս վանեալ և զԿրիւսոս կապեալ, այլ յԵլեսպոնտոս և ի Թրակէ զտէրութեանցն փոխեաց զբնութիւն, ծովացն ընդ երկիր բերեալ լինէր, և ընդ ծով հետևակելով, Թեսաղացւոցն սպառնալով, և համբաւն հիացուցանէր զՀելլենականն։ Կործանեաց զԼակեդեմոնացիս, փախոյց զՓոկէացիս, Լոկրացիք անձնատուրք եղեն, Բիւտացիք մասն են ի կազմածոյ նորա. առհասարակ նմա Ելլադայ մա-տուցանէր զահն։ Յետ փոքու ժամանակի աղէտք անցին զամենեքումբք. ոչ այնքան թշուառացան Կիւրոս ընդ Մասագետս պատերազմելով. ոչ այնպիսի կիրս կրեաց Դարեհ ի Սկիւթացւոցն պահուստ, և ոչ Կամբիւսէս յԵթովպացիս. փոքր և Քսերքսին յԵլլադա զօրու երթալն, թողլով նոցա

զգանձս և զխորանս, միայն կենդանի փախուցեալ մազապուր։ Այլ սա մեծամեծ յաղթանակօք պանծացեալ՝ յիւրոց զօրացն խողխողի։

«Ես այս վկայութիւններն հաւատարմութեան արժանի համարիմ, ասէ Խորենացին. ուստի այն Կրիւսոս որ առ Կիւրոսիւ ասի լինել՝ կամ սուտ է և կամ այլ ոք՝ Կրիւսոս անուամբ»։ Այսպէս մեր ծերունի պատմիչը բովանդակելով Վաղարշակայ և երկուց յաջորդաց նորա փառաւոր պատմութիւնը՝ կ՚անցնի առ Տիգրան մեծ, զոր արդէն առ Հօրըն թագաւորեալ կը դնէ, և որով որպէս ասացաք՝ կ՚սկսի մեր պատմութեան երկրորդ, այն է պատմական ժամանակը։ Քննական դիտողութիւնները, զորս արդ պիտի, պարունակէ մեր յաջորդ գլուխը՝ հարկ ի վերայ դրաւ մեզ այսպէս երկար մէջ բերել այն պատմութեան բովանդակութիւնը։



# ԳԼՈՒԽ Է.

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ

1. *Պարթեւաստան:* 2. *Ապստամբութիւն Պարթեւաց եւ ծագումն նոցա ըստ Խորենացւոյն:* 3. *Թուականի տարբերութիւն առ Խորենացւոյն:* 4. *Պարթեւք յԱբրահամէ չեն:* 5. *Թագաւորք ըստ Խորենացւոյն եւ ըստ Դահեկանաց:* 6. *Պարթեւ թագաւորաց հարստութեան բուն թուականը:* 7. *Տոհմ Պարթեւ թագաւորաց. Մար-Ապիւթական ճիւղը:* 8. *Պահլաւք. Տարբերութիւն նոցա ի Պարթեւաց:* 9. *Ցանկութիւն Պահլաւ ցեղին:* 10. *Պարթեւաց վերջին թագաւորն:* 11. *Աղերս Պահլաւաց ընդ Սասանեանս:* 12. *Դահեկանք եւ աղբիւր Խորենացւոյն. Խոռոհբուտ. Բարսումա:* 13. *Պատմութիւն Խորենացւոյն զքաջէն Արշակայ:* 14. *Այս պատմութեան սխալը:* 15. *Պատմութիւն Խորենացւոյն զմեծէն Արշակայ. Այս պատմութեան սխալը:* 16. *Թագաւորել Վաղարշակայ ըստ Խորենացւոյն:* 17. *Այս պատմութեան անտեղութիւնը:* 18. *Պարթեւք չտիրեցին «երրորդ մասին աշխարհի», այսինքն համօրէն Ասիոյ:* 19. *Միհրդատ Ա. կամ Արշակ Զ.:* 20. *Վաղարշակայ պատմութեան զաղտնիքը:* 21. *Կրկին աւանդութիւն զծագմանէ Արշակունեաց. Պողիբիոս, Ստրաբոն:* 22. *Կարեւոր հետեւութիւն:* 23. *Մեծագոյն արժանիք Վաղարշակայ. Խնդիր զպատմութենէ Հայոց. Հանճարեղ հիւսուած հարկաւոր պարագայից:* 24. *Վաղարշակայ ընծայուած յատկութիւնք եւ գործք:* 25. *Առաջին երեւելի գործ Վաղարշակայ. Հակասութիւնք Խորենացւոյն:* 26. *Պատերազմն Վաղարշակայ. Մորփիւղիկէս:* 27. *Պատմական տեսութիւն մը:* 28. *Ժամանակի կանխումն* (anachronisme): 29. *Խորենացւոյն զգօնութիւնը:* 30. *Մեծագործութիւն:* 31. *Զարմանալի խրատ:* 32. *Դարձ Վաղարշակայ ի Մծբին. Բարեկարգութիւնք:* 33. *Կարեւոր դիտողութիւն մը. Նոր աղբիւր Խորենացւոյն. Յունական պատմութիւնք:* 34. *Բագրատունիք:* 35. *Գնթունիք:* 36. *Խոռխոռունիք:* 37. *Վարաժնունիք:* 38. *Գաբեղեանք, Աբեղեանք, Արծրունիք, Գնունիք, Սպանդունիք, Հաւենունիք, Զիւնականք. Պահապան գունդեր:* 39. *Մարդպետութիւն:* 40. *Մուրացանք՝ երկրորդ թագաւորութեան:* 41. *Սահմանագլուխ ցեղեր. Սիւնիք:* 42. *Աղուանք, Առան:* 43. *Վիրք. Գուշար:* 44. *Անգեղտուն:* 45. *Աղձնիք:* 46. *Հակասութիւն մը:* 47 *Բդեշխութիւնք. Զինուորական սահմանապահք:* 48. *Այլ նախարարութիւնք. Մոկացիք:* 49. *Վահունիք. Վահագն.* 50. *Ընդհանուր դիտողութիւն:* 51. *Պաշտօնէութիւնք առ Արշակունեօք:* 52. *Ուրիշ կարգեր:* 53. *Նոր աղբիւր Խորենացւոյն. Ափրիկանոս. Եւսեբի վկայութիւնը:*

**1.** Պարթեւաստան էր մին արիական երկիրներէն, յայնկոյս Տիգրիս գետոյ. լեռնային, մանաւանդ հիւսիսային կողմը, անջրդի և անկոխ անապատներով։ Պարթեւաստան ունէր սահման ի հիւսիսոյ զՎրկանս ի հարաւակողման Կասպից ծովուն, յարեւելից՝ բուն զԱրիս, այսինքն Արիք կոչուած ցեղը, յարեւմտից՝ զՄարս, ի հարաւոյ՝ զԿրմանս։ Բնակիչքն էին արիական ցեղէ, քաջ և վարժ ի ձիավարել, այլ բիրտ։ Վասն բրտութեան բնակչացն, ինչպէս նաև վասն ամայութեան երկրին՝ անտես լեալ էր միշտ Պարթեւաստան արիական ցեղերուն ազնուագոյններէն, որպիսի էին Մարք և Պարսք։ Քան զսոսա աւելի յարգ չընծայեցին Սելեւկեանք այս երկրին, ուստի և Դարեհ կոչեցեալն Արշակ, այն է արքայ, ի զարմէ Աքեմենեանց (Տես թիւ 7. այս գլխոյ), իբր 255-ին նախ քան զՔր., տեսեալ զտկարութիւն Սելեւկեանց և զհաստատութիւն նոր յունական թագաւորութեանն Բակտրիոյ (256) ապստամբութեամբ, յարմարագոյն դատեցաւ զՊարթեւս առնուլ ի ձեռն, և կազմեց ինքն ևս նոր պարսկական կամ արիական տէրութիւն մը, որ կոչեցաւ Պարթեւական։

**2.** Ըստ Խորենացւոյն (գիրք Բ. գլ. Ա.) Անտիոքոս Թէոսի մետասաներորդ տարին, վաթսուն ամաւ յետոյ քան զմահն Աղեքսանդրի, կ՚ապստամբին Պարթեւք ի Մակեդոնացւոց (կամի ասել ի Սելեւկեանց), և կը թագաւորէ Արշակ քաջ, այսինքն Արշակ Ա., ի զաւակէ Աբրահամու, ի կնոջէ նորա Քետուրայ, որպէս զի կատարուի բան Տեառն առ Աբրահամ, թէ Թագաւորք ազգաց ի քէն ելցեն։ (Տես էջ 205)։ Պարթեւաց յԱբրահամէ սերելուն պատմութիւնը կը կրկնէ Խորենացին այլուր (գիրք Բ. գլ. ԿԸ.) աւելի ընդարձակ այսպէս. «ՅԱդամայ քսաներորդ առաջներորդ նահապետ մեզ զԱբրահամ աստուածային պատմութիւնքն ցուցանեն, և ի նմանէ եղեալ ազգդ Պարթեւաց։ Քանզի ասէ, յետ մեռանելոյն Սառայի առեալ Աբրահամու կին զՔետուրայ, յորմէ ծնան Եմրան և եղբարք նորա, զոր Աբրահամ ի կենդանութեան իւրում մեկնեաց յԻսահակայ, արձակելով յերկիրն արեւելից. յորոց սերեալ ազգ Պարթեւաց»։

**3.** Նախ գիտելի է, զի ի մէջ վաթսներորդ ամի մահուան Աղեքսանդրի, այն է 263 նախ քան զՔր., և ի մէջ մետասաներորդ ամի թագաւորութեան Անտիոքայ Թէոսի, այն է 250՝ իբր երեքտասան ամաց միջոց կայ։ Դիտողութեան արժանի է նաև, զի Խորենացին որ հոս (գիրք Բ. գլ. Ա.) Արշակայ քաջի (Արշակայ առաջնոյ) կու տայ ապստամբել ի Մակեդոնացւոց՝ այլուր (գիրք Ա. գլ. Թ.) զմեծէն Արշակայ, որ ըստ նորին իսկ Խորենացւոյ իբր 56 ամօք յետոյ է

քան զԱրշակ քաջ՝ ըսէ թէ ապստամբեցաւ Մակեդոնացիներէն (տես էջ 204)։ Գիտենք սակայն, զի Պարթեւք թելադրութեամբ Արշակայ առաջնոյ փորձեցին առ Անտիոքաւ Թէոսիւ (255) ապստամբել ի Սելեւկեանց, սակայն վաղ մարեցաւ այս ապստամբութիւնը։ Առ Սելեւկոսիւ Բ-իւ (246—225), յաջորդաւ Անտիոքայ Թէոսի, Կալլինիկոս կոչեցեալ, եղեն Պարթեւք ինքնագլուխ, եւ թագաւորեց Արշակ Ա. նախ քան զՔր. յամին 238, զոր իբրեւ բուն թուական ազատութեան իւրեանց կը տօնէին Պարթեւք։ (Կիլմէն, Հնախօս. արեւել. գլ. ԺԷ.)։

4. Խորենացին զՊարթեւս կը համարի սերեալ յԱբրահամէ, ինչպէս կ'երեւի, նայելով Ծննդոց ԻԵ. գլխոյն 6 համարին, ուր ասի, թէ Աբրահամ արձակեց զորդիս հարճից իւրոց «յերկիրն արեւելից»։ «Եւ ետ Աբրահամ զամենայն ինչս իւր Իսահակայ որդւոյ իւրում, եւ որդւոց հարճիցն իւրոց որ էին Աբրահամու՝ ետ Աբրահամ պարգեւս, եւ արձակեաց զնոսա յԻսահակայ որդւոյ իւրմէ, մինչդեռ ինքն կենդանի էր, *ընդ արեւելս յերկիրն արեւելից*»։ Խորենացին կը սխալի սակայն արեւելից երկրաւ հասկնալով արիական ազգաց երկիրն անդր քան զՏիգրիս։ «Երկիր արեւելից» եւ «որդիք արեւելեայց» բառերով կ'իմանան գիրք Պաղեստինու սահմանակից մասն Միջագետաց եւ Արաբիոյ, ուր կը բնակէին սեմական, ասորի եւ արաբացի ցեղեր։ ԶՅակոբայ ասի, թէ գնաց «յերկիրն արեւելից առ Լաբան,» այն է ի Միջագետս Ասորւոց. «Եւ զոտս իւր ամբարձեալ Յակոբայ գնալ *յերկիրն արեւելից* առ Լաբան, որդի Բաթուելի Ասորւոյ» (Ծննդ. ԻԹ. 1)։ Իսկ «որդիք արեւելեայց» շատ անգամ կը յիշուին ի պատմութեան Հրէից ընդ Մադիամու եւ Ամաղեկայ, որ էին արաբացի ցեղեր. «Եւ լինէր իբրեւ վարէր (կը ցանէր) այր Իսրայելի՝ ելանէր Մադիամ եւ Ամաղէկ եւ *որդիքն արեւելեայց*, հասանէին ի վերայ նոցա»։ «Եւ ամենայն Մադիամ եւ Ամաղէկ եւ ամենայն *որդիքն արեւելեայց* ժողովեցան ի միասին, եւ եկին բանակեցան ի հովիտն Յեզրայելի» (Դատ. Զ. 3. 33)։ «Եւ Մադիամ եւ Ամաղէկ եւ *որդիքն արեւելեայց* բանակեալ էին ի ծործորսն» (Դատ. Է. 12)։

Խորենացին չլինելով տեղեակ մարդկային ցեղերու զանազանութեան՝ կը կարծէր թերեւս թէ արիական ցեղ մը, լեզուաւ եւ երկրաւ տարբեր, որպիսի էին Պարթեւք՝ կրնար սերիլ ուրիշ նոյնպէս լեզուաւ եւ երկրաւ տարբեր սեմական ցեղ մը, Եբրայեցւոց նահապետէն, ուստի եւ Ծննդոց «արեւելք» բառին այն ընդարձակ նշանակութիւնը տալով՝ զԱրշակ կը սերէ յԱբրահամէ եւ կատարուած կը համարի զբան Գրոյն, թէ թագաւորք պիտի ելլէին յԱբրա-

համէ. «Հայր ազգաց բազմաց եդի զքեզ, և աճեցուցից զքեզ յազգս, և թագաւորք ի քէն ելցեն» (Ծննդ. ԺԷ. 5,6)։ Բայց զՔե-տուրայ եւս տայ նոյնպէս. «Աճեսջիր և բազմասջիր. ազգք և ժողովուրդք ազգաց եղիցին ի քէն, և թագաւորք յերանաց քոց ելցեն» (Ծննդ. ԼԵ. 11)։ Յայտնի է սակայն, թէ Ծննդոց հեղինակն այս խօսքը դնելով ի բերան Եհովայի խոստման ձեւով առ Աբրահամ՝ կ'ակնարկէ իմացնելու ի կամ արաբացի ցեղերուն թագաւորները, որոնց ազգաբանութիւնը կը դնէ Գլ. ԻԵ. ԼԶ., և որ ըստ եբրայական աւանդութեան, (Ծննդ. ԻԵ. 1,2,12), էին սերունդք Աբրահամու, որպէս Իսմայէլ, Եդոմ և այլք, ինչպէս որ յերանաց Յակոբայ ելլող թագաւորօք ակնարկէին թագաւորք Յուդայ և Իսրայէլի։ Առանց լուսոյ դրական գիտութեանց, ի վերայ բանից Գրոց պատմութիւն հիմնելէն որչափ սխալներ սպրդած կան ի գրուածս հին քրիստոնեայ մատենագրաց։

5. Բայց թողլով այս մանր պարագաները՝ գանք բուն պատմելոցն ի Խորենացւոյն զՊարթևաց։ Խորենացին չորեքտասան թագաւոր միայն կը դնէ Պարթևաց, յԱրշակայ առաջնոյ մինչև յԱրտաւան վերջին թագաւոր Պարթևաց. մինչ ըստ դահեկանաց նոցա, որ գրեթէ ամբողջ կան՝ երեսուն թագաւորք նստան Պարթևաց։

## ԱՆՈՒԱՆՔ ՊԱՐԹԵՒ ԹԱԳԱՒՈՐԱՑ

| Ըստ Խորենի. | Ըստ դահեկանաց | | | |
|---|---|---|---|---|
| Արշակ Ա. քաջ. | Արշակ Ա. | (Դարեհ). | Արշակ ԺԶ. | Հրահատակ. |
| Արտաշէս Ա. | Արշակ Բ. | Տրդատ. | Արշակ ԺԷ. | Որոդէս Բ. |
| Արշակ Բ. մեծ. | Արշակ Գ. | Արտաւան Ա. | Արշակ ԺԸ. | Վոնոն Ա. |
| Արշանակ. | Արշակ Դ. | Պրապատ. | Արշակ ԺԹ. | Արտաւան Գ. |
| Արշական. | Արշակ Ե. | Հրահատ Ա. | Արշակ Ի. | Վարդան. |
| Արշէզ. | Արշակ Զ. | Միհրդատ Ա. | Արշակ ԻԱ. | Գոտարզ. |
| Արշաւիր. | Արշակ Է. | Հրահատ Բ. | Արշակ ԻԲ. | Վոնոն Բ. |
| Արտաշէս Բ. | Արշակ Ը. | Արտաւան Բ. | Արշակ ԻԳ. | Վաղարշ Ա. |
| Դարեհ. | Արշակ Թ. | Միհրդատ Բ. | Արշակ ԻԴ. | Բակուր. |
| Արշակ Գ. | Արշակ Ժ. | | Արշակ ԻԵ. | Խոսրով. |
| Արտաշէս Գ. | Արշակ ԺԱ. | Սանատրուկ. | Արշակ ԻԶ. | Վաղարշ Բ. |
| Պերոզ. | Արշակ ԺԲ. | Հրահատ Գ. | Արշակ ԻԷ. | Վաղարշ Գ. |
| Վաղարշ. | Արշակ ԺԳ. | Միհրդատ Գ. | Արշակ ԻԸ. | Վաղարշ Դ. |
| Արտաւան.. | Արշակ ԺԴ. | Որոդէս Ա. | Արշակ ԻԹ. | Վաղարշ Ե. |
| | Արշակ ԺԵ. | Հրահատ Դ. | Արշակ Լ. | Արտաւան Դ. |

6. Թէպէտ իւրաքանչիւր թագաւորի թուականը ճշդիւ գտնել դժուարին է ըստ դահեկանաց՝ ստոյգ է սակայն, թէ սկիզբն հարստութեան Պարթև թագաւորաց չանցնիր անդր քան զամն 255 նախ քան զՔր. և վերջն չէ յառաջ քան զամն 226 յետ Քրիստոսի, որ է միանգամայն թուական սկզբան հարստութեան Սասանեանց։ Ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն՝ Պարթևաց թագաւորութիւնը կ՚սկսի նախ քան զՔր. 263-ին, որ է վաթսներորդ ամ յետ մահուան Աղեքսանդրի, և կը վերջանայ յետ Քր.ի 172-ին, հաշիւ մը՝ որ կը խախտէ ի հիմանց մեր բոլոր պատմութիւնը։

7. Գիտենք թէ Պարսից վերջին թագաւորը Դարեհ Կոդոմանոս, յետ վերջին պարտութեանն ի ճակատուն Արբեղայ (331), քաշուեցաւ Բակտրիոյ մայրաքաղաքը Բակտրա, բանակ կազմել անդ ընդդէմ Աղեքսանդրի, բայց սպանաւ Բակտրիոյ սատրապէն Բեսոսէ, զոր կալաւ Աղեքսանդր և մատնեաց ազգականաց Դարեհի։ Դարեհի ցեղը մնաց ի Բակտրիա իբրև թագաւորական զարմ. (Բուզ. Ե. Լէ.)։ Երբ Պարթևք ապստամբեցան ի Սելևկեանց (255 կամ 238)՝ այն թագաւորական ցեղէն Դարեհ կամ Զարեհ (ըստ Շահնամէի) իբրև Արշակ առաջին թագաւորեց Պարթևաց։ Յետ բարձման յոյն թագաւորութեան Բակտրիոյ (254—126) թագաւորեց ի Բակտրա նոյն Դարեհեան ցեղէն ուրիշ ճիւղ մը, զոր արդիք կը կոչեն Մար—Սկիւթացի (Médo—Scythe) և որոց դահեկանները գտնուած են առ մեօք, նման դահեկանաց Պարթևաց (Կիլլմէն, Հնախօս. Արև. ւել. Բակտրիա)։

Այս Մար—Սկիւթական կոչուած թագաւորութիւնն է, զոր ոչ միայն Խորենացին, այլև քան զնա հնագոյնք ի մատենագիրս մեր, Ագաթանգեղոս և Բուզանդ, ստէպ կը յիշեն Քուշեան, երբեմն ևս Մազքութք կամ Հոն անուամբ, որով կ՚իմանան հիւսիսային արևելեան ազգերն անդր քան զՊարսս։

8. Հին մատենագիրք մեր Պահլաւ կ՚անուանեն մանաւանդ այս երկրորդ ճիւղը յանուն Բահլ քաղաքին, որ է Բակտրա, մայրաքաղաք Բակտրիոյ, և կը համարին այս ճիւղն ազգակից Պարթև թագաւորաց։ Խորենացին միևնոյն ցեղ կամ ճիւղ կը համարի Պարթևն ու Պահլաւը, որպէս թէ Պարթև թագաւորաց ցեղը կոչուեցաւ նաև Պահլաւ յանուն Բահլ քաղաքին, ուր թագաւորած կը համարի զԱրշակ քաջ և զերկոսին յաջորդս նորա զԱրտաշէս և զԱրշակ մեծ։ «Որպէս ասացաք՝ յետ վաթսուն ամի մահուանն Աղեքսանդրի թագաւորէ ի վերայ Պարթևաց Արշակ քաջ, ի քաղաքին որ կոչի Բահղ Առաւատին, յերկրին Քուշանաց . . . ։ Յետ նորա որդի նորին Արտաշէս,. . . և ապա Արշակ նորին որդի որ կոչեցաւ

մեծ , . . . և չուեալ ի Բահլ՝ հաստատեաց զթագաւորութիւն իւր . . . վասնորոյ զարմք նորա Պահլաւք անուանեցան»: Բայց չէ ուղիղ դնել թագաւորեալ զԱրշակ քաջ և զյաջորդս նորա մինչև 126 նախ քան զՔր. ի Բահղ, այսինքն ի Բակտրա մայրաքաղաք Բակտրիոյ, քանզի 254-էն մինչև 126 Բակտրիա էր ուրոյն յունական թագաւորութիւն: Յետ անկման այսր յունական թագաւորութեան հարկ է դնել թագաւորեալ ի Բահղ նոր Դարեհեան ճիւղ մը, որ կոչեցաւ Պահլաւ, և զոր Բուզանդ կը կոչէ Արշակունի, իբրև ազգակից վերջին հայ Արշակունեաց.—«Զայն ժամանակաւ (առ Վարազդատաւ, յաջորդաւ Պապայ ) թագաւորին Պարսից Սասանականին առեալ էր պատերազմ ընդ մեծ թագաւորին Քուշանայ ընդ Արշակունոյն որ նստէր ի Բաղհ քաղաքին» (Բուզ. Ե. Լէ.). և այլուր (Ե. Է.) ասէ. «Զայնու ժամանակաւ խաղաղացաւ պատերազմ տալ Պարսից ընդ Հայս, զի Արշակունին թագաւորն Քուշանաց, որ նստէր ի Բահղ քաղաքի՝ նա յարոյց տալ պատերազմ ընդ Սասանականին Շապհոյ թագաւորին Պարսից»:

Նոյն իսկ Խորենացին, որ ինչպէս տեսանք վերը, զՊահլաւս նոյն կը համարի ընդ Պարթևաց՝ այլուր մի և նոյն ցեղի տարբեր ճիւղեր կը դնէ զնոսա: Ի խօսելն զմահուանէն Արտաւանայ՝ ասէ վասն Խոսրովու առաջնոյ մերոյ թագաւորի. «Լսէ զբօթ մահուանն Արտաւանայ և զմիաբանութիւն ամենայն զօրաց Պարսից և նախարարաց, նաև զիւրոյ ազգին *Պարթևաց* և *Պահլաւկաց*» (Խոր. Բ. ՀԱ.). և ի յաջորդ գլուխն դարձեալ զնմին Խոսրովայ ասէ. «Յղէ ի ձեռն Հրեշտակաց առ իւր առհմայինսն, *Պարթեւ* և *Պահլաւիկ ազգս*»:

**9.** Պահլաւ ճիւղն քան զՊարթևականն յարգի էր առ Պարսիկս, քանզի Պահլաւք աւելի մաքուր պահած էին հին արիական կրօնքը և սովորութիւնները քան զՊարթևս, որ իբրև կարի յունասէրք՝ ատելի էին Արեաց: Խորենացին «պատուականագոյն» կ'անուանէ Պահլաւ ցեղը. «Յայնժամ հասանեն առ Խոսրով ոմանք ի Հրեշտակաց իւրոց որ ի *պատուականագոյն* ազգն երթեալ էին, ի խորագոյն աշխարհն, ի նոյն ինքն ի ներքս ի Բահլ» (Խոր. Բ. ՀԲ.): Նոյն իսկ Արտաշիր՝ «պատուական» վերադիրը կու տայ Պահլաւ ցեղին, յառաջարկելն եղբարց Խոսրովու, որ Պահլաւ էին՝ սպանանել զԽոսրով. «Զերուն *պատուական* զձեր սեպհական Պահլաւն, զայն անդրէն ի ձեզ դարձուցից» (Խոր. Բ. ԿԷ.):

**10.** Այս Պահլաւ ցեղէն էր Պարթևաց վերջին թագաւորն Արտաւան, եղբայր մեծին Խոսրովու և Անակայ (տես էջ 86), որ ըստ Ագաթանգեղոսի, որպէս թէ խաբուելով յԱրտաշրէ յուսով թագաւորելոյ հայրենի ազգին իւրում Պահլաւաց՝ սպան զԽոսրով:

«Խօսել սկսաւ ընդ նմա (ընդ Անակայ) թագաւորն (Արտաշիր) և ասէ. Եթէ միայն զայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ (ըսպանանել զԽոսրով)՝ . . . զձեր տեղհական Պահլաւն ի ձեզ դարձուցից» (Ագաթ. Բ.)։ «Իբրև զայն լսէր (Անակ)՝ զերդումն ուխտին յիշէր որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր. նա և ըզխոստմունս յիշէր զպարգևացն, և ի բուն աշխարհն փափաքէր, որ Պահլաւն կոչէր» (Անդ)։ Նոյնպէս կը պատմէ Խորենացին տանելով յԱգաթանգեղեայ. «Խոստանայր (Արտաշիր եղբարց Արտաւանայ և Խոսրովու որ էին Պահլաւ) զբուն տունն դարձուցանել ի նոսա որ Պահլաւն կոչէր, զարքայանիստ քաղաքն Բահլ, և զամենայն աշխարհն Քուշանաց» (Խոր. Բ. ՀԴ.)։

11. Թուի թէ Սասանեանք կամեցան նուաճել նաև զՊահլաւճիւղն, ինչպէս նուաճած էին Պարթևականք։ Ցազկերտ ի հրովարտակին իւրում առ Հայաստան ազգս՝ ասէ. «Մեք ի մտի եդաք անվրէպ խորհրդովք խաղալ գնալ յաշխարհն արևելից, աստուածոցն օգնականութեամբ դարձուցանել ի մեզ զտէրութիւնն Քուշանաց» (Եղիշ. էջ 18. Տպգր. Վեն. 1825)։ Բայց չյաջողեցաւ խորհուրդ Ցազկերտի, քանզի ըստ նմին Եղիշէի՝ «Զերկեամ մի կըռուեալ՝ ոչինչ կարաց ազդել նոցա» (էջ 21)։ Եւ էջ 250—251 ասէ. «Զայս իբրև լուաւ թագաւորն Քուշանաց՝ . . . փութացաւ վաղվաղակի, զոր ժողովէր, գունդ կազմէր ելանել նմա ընդ առաջ հզօր ձեռամբ. . . ։ Բազում հարուածս հասուցանէր ի վերայ զօրացն արքունի, և այնպէս նեղեալ շտապէր, զի անձուկ լաշքարաւ վատախտարակ արարեալ այսրէն դարձուցանէր, և տապաստակաւ զհետ մեռեալ աւերէր զբազում գաւառս արքունի, և ինքն ողջանդամ անդրէն յերկիրն իւր դառնայր»։ Նոյնպէս և աւելի դըտակաւ և մանր կը պատմէ Փարպեցին. «Եւ յամի վեշտասաներորդէ թագաւորութեանն իւրոյ Ցազկերտ չու արարեալ ամենայն բազմութեամբ իւրով խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց. . . ։ Եւ հասեալ ի սահմանս Թշնամեացն՝ և ոչ սակաւ մի մասամբք կատարէին խնդիրք թագաւորին, այլ ամենայնիւ նկուն եղեալ դառնայր ամօթալից, կորուսեալ ի զօրաց իւրոց արս ընտիրս և նշանաւորս, նոյնպէս և յայլ ռամիկ այրուձիոյ։ Քանզի ոչ դէմ յանդիման ճակատեալ թշնամեացն պատերազմէին ընդ զօրսն Պարսից, այլ յեղակարծումն անկեալք ի վերայ միոյ միոյ թևի՝ հանէին ընդ սուր զբազումս, և ինքեանք դարձեալ անվնաս աներևոյթ լինէին։ Եւ այսպէս ի բազում աւուրս արարեալ՝ վատնէին սաստիկ հարուածովք զզօրսն Պարսից» (Փարպ. ԽԸ.)։

12. Առանց տարակուսի է, թէ իբրև պատմական ազգեր՝ ա-

ժանի հաւաստիութեան են դաշնելանք։ Ուստի անուանք թա-
գաւորաց որ առ Խորենացւոյն՝ կամ հնարաւոր են, և կամ, որ
աւելի հաւանական է՝ կը փերաբերին այլոյ հարստութեան։ Խորե-
նացին յետ գնելոյ ի ԿԸ. և ի ԿԹ. գլուխ Բ. գրոցն զազգաբանու-
թիւն Պարթև թագաւորաց, յԱրշակայ քաջէ մինչև ցԱրտաւան՝
առէ. Զսա (զԱրտաւան) սպաննելով Ստահրացին Արտաշիր, որդի
Սասանայ՝ եբարձ զթագաւորութիւնն Պարթևաց, յափշտակելով
զերկիր ժառանգութեան նորա։ Այս ժամանակին պատմիչները շատ
են ի Պարսից և յԱսորւոց, նաև ի Յունաց։ «Զսա սպանեալ Ստահ-
րացւոյն Արտաշրի, որդւոյ Սասանայ, բառնալով զթագաւորութիւնն
Պարթևաց, հանելով ի նոցանէ զաշխարհն ժառանգութեան։ Բա-
զում են ժամանակիս այսորիկ պատմողք ի Պարսից և յԱսորւոց,
այլ և ի Յունաց»։ Յետոյ յիշելով Պաղեփատոս, Պորփիւր և Փիլի-
մոն անուն անծանօթ հեղինակներ, որ որպէս թէ գրած էին Պար-
թևաց պատմութիւնը՝ կը յաւելու. Բայց մեք ասասցուք ի մա-
տենէն Բարսումայի, զոր բերաւ Խոռոհբուտ։ Այս Խոռոհբուտ դպիր
էր թագաւորին Պարսից Շապհոյ, և անկանելով ի ձեռս Յունաց,
երբ Յուլիանոս եկաւ զօրօք ի Տիզբոն՝ յետ մահուան Յուլիանու՝
առ Յովիանոսիւ արքունի սպասաւորաց հետ եկաւ ի Յոյնս, և մեր
հաւատքը դաւանելով կոչեցաւ Եղիազար, և ուսեալ յունարէն՝
պատմեց Շապհոյ և Յուլիանոսի գործերը։ Թարգմանեց նաև մա-
տեան մի, որ ունէր առաջնոց պատմութիւնը, յօրինեալ ի Բարսու-
մայէ ումեմնէ, որ էր գերեկից նորա և որոյ պարսկերէն անունն էր
Ռաստսոհուն։ Այս մատենէն ուսեալ մեր՝ կը գրենք աստի, թող-
լով զբարբանջմունս առասպելաց նորա։ «Բայց մեք ասասցուք ի
մատենէն, զոր եբեր Խոռոհբուտ զԲարսումայի։ Այս Խոռոհբուտ
դպիր եղեալ Շապհոյ թագաւորին Պարսից, և անկեալ ի ձեռս Յու-
նաց յորժամ Յուլիանոս զօրու հանդերձ ի Տիզբոն չոգաւ՝ և ի մե-
ռանելն նորա անդ՝ ընդ Յովիանու ի Յոյնս ընդ արքունական սպա-
սաւորսն եկն և մերոյ հաւատոյս դաւանեալ, անուանեցաւ Եղիա-
զար, և յայն լեզու ուսեալ՝ պատմագրեաց զգործս Շապհոյ և
Յուլիանոսի։ Ընդ նմին թարգմանեաց և զառաջնոցն պատմութիւնս
մատեան մի, որ գերեկից իւր լեալ Բարսումայի ուրումն անուամբ,
զոր Պարսք Ռաստսոհուն կոչեն. յորմէ մեր ուսեալ՝ երկրորդեմք
այժմ ի գիրս այս, թողլով զառասպելաց նորա բարբանջմունս»։

Արդարև զարմանք են, զի Խորենացին յետ ասելոյ, թէ շատերը
գրեցին այս ժամանակին պատմութիւնը, թողլով զայլս՝ կ՚առնու
Բարսումայի պարսիկ առասպելական պատմութենէն։ Չիմարդ և իցէ
հաւանական է թէ Պարթև թագաւորաց այն տարբեր ազգաբա-

նութիւնն առ Խորենացւոյն՝ կը վերաբերի Պահլաւ ցեղին, զոր պարսիկ պատմիչն Բարսումա, ադրիւր Խորենացւոյն՝ շփոթած կը թուի ընդ ազգաբանութեան Պարթև թագաւորաց, ինչպէս յայտնի է վերջին երկու թագաւորաց, Վաղարշու և Արտաւանայ, անուններէն, որ նոյն են ընդ անուանց դահեկանաց։

**13.** Ըստ Խորենացւոյն՝ յետ վաթսուն ամի մահուան Աղեքսանդրի, այն է 263-ին նախ քան զՔր., Արշակ քաջ, որ է Արշակ Ա., թագաւորելով Պարթևաց՝ տիրեց բոլոր արևելից, «թափելով յինքն զամենայն արեւելայս». և լսելով թէ Հռոմայեցիք զօրանալով յԵւրոպա և ի Միջերկրականին, «ի վերայ արևմտից և ծովու», առին Սպանիոյ հանքերը, «թափեցին ի Սպանիացւոց զբովսն ուստի ոսկին և արծաթն հատանիր», և հնազանդեցուցին զԳաղիա և զթագաւորութիւնն Ասիացւոց (Սելևկեանց), «հարեալ ընդ հարկիւ կացուցին զԳաղատացիս և զթագաւորութիւնն Ասիացւոց»—խնդրեց ի Հռոմայեցւոց լինել նմա դաշնակից և չօգնել Սելևկեանց, «հրեշտակս առաքեալ խնդրէր զդաշնաւորութիւն, զի մի օգնեսցեն Մակեդոնացւոցն», տարուէ տարի ոչ հարկ, այլ ընծայ տալու խոստմամբ Հռոմայեցւոց հարիւր քանքար, «ոչ տալով հարկս, այլ պատարագս միայն ամի ամի հարիւր քանքարոյ» (Տես և էջ 205)։

**14.** Թող այս պատմութեան սխալը՝ ժամանակագրութիւնն ևս անյարմար է։ Արդարև սխալ է ասել Խորենացւոյն զԱրշակայ Ա-ոյ, թէ «թափեաց յինքն զամենայն արևելեայս», մինչ Պարթևաց աշխարհակալութիւնը կ'սկսի առ Միհրդատաւ Ա-ով, որ է Արշակ Զ. (165—139)։ Իսկ «թափելն Հռոմայեցւոց զբովսն ի Սպանիացւոց», և «ի հարկի կացուցանել նոցա զԳաղատացիս և զթագաւորութիւնն Ասիացւոց»՝ բազում ամօք յետոյ են քան զմահն Արշակայ, որ ըստ հաշուոյ Խորենացւոյն՝ թագաւորեց 263—232։ Բոլոր այս միջոցին Հռոմայեցիք զբաղեալ էին պունիկեան պատերազմներով (264—201)։ Գաղղիա նուաճեցաւ 220-ին, Սպանիոյ մի մասն միայն՝ 206-ին, իսկ Սելևկեանց յաղթեցին Հռոմայեցիք 190-ին առ մեծաւն Անտիոքաւ (225—186)։ Նոյնպէս անդէպ է ասել Խորենացւոյն, թէ Արշակ խնդրեց դաշամբ ստիպել զՀռոմայեցիս՝ չօգնել Սելևկեանց, հատուցանելով նոցա իբրև պարգև ամի ամի հարիւր քանքար։ Հռոմայեցւոց ազդեցութիւնն սկսաւ յարևելս յետ յաղթելոյ նոցա Անտիոքայ մեծի, 190 նախ քան զՔր., ուստի և բազում ամօք յետոյ քան զմահն Արշակայ։ Եթէ կենդանի ևս լինէր յայնժամ Արշակ՝ աւելորդ էր դաշամբ ստիպել զՀռոմայեցիս չօգնել Սելևկեանց, քանզի Հռոմայեցիք թշնամի էին Սելևկեանց և ոչ բարեկամ։

**15.** Ոչինչ ընդհատ սխալ և շփոթ է նաև պատմութիւն Խորե-

նացւոյն զԱրշակայ մեծէ։ Ըստ Խորենացւոյն՝ Արշակ մեծ, թոռն Արշակայ Ա-ոյ, սպաննելով «զԱնտիոքոս թագաւոր ի Նինուէ»՝ կը հնազանդեցունէ «զամենայն տիեզերս ընդ իւրով ձեռամբ»։ Այլուր ասէ թէ Դեմետր, այն է Դեմետրիոս Բ. Նիկատոր (146 —125) եկաւ ի վերայ Արշակայ, բայց բռնուելով տարուեցաւ երկաթի կապանօք ի Պարթեւս, և եղբայր նորա Անտիոքոս Սիդիտէս կալաւ աթոռը. բայց պատերազմի բռնուելով ընդ Արշակայ Նեղ տեղեր՝ սաստիկ ձմեռան պատճառաւ կորեաւ ամենայն զօրօքն։ Արդ՝ ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն՝ Արշակ մեծ թագաւորեց 206—154, իսկ Դեմետրիոս Նիկատոր, ըստ պատմութեան Սելեւկեանց՝ 146-ին, երբ 7 ամօք յետոյ քան զմահն Արշակայ, և եղբայր Դեմետրեայ Անտիոքոս Սիդիտէս սպանաւ ոչ թէ յԱրշակայ ի Նինուէ, այլ ի մեհենին Եղիմացւոց 129-ին նախ քան զՔր., այսինքն ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն՝ երբ քսան և հինգ ամաւ յետոյ քան զմահն Արշակայ։

**16.** Խորենացին յետ տալոյ տիրել Արշակայ մեծի համօրէն Ասիոյ, «երրորդ մասին աշխարհիս»՝ տայ նմա թագաւորեցուցանել զեղբայր իւր Վաղարշակ ի վերայ Հայոց, որպէս թէ հարկ համարելով առնել այնպէս ի հաստատութիւն թագաւորութեան իւրոյ «Պատեհ իմն համարեալ այսպէս անշարժ իւրոյ թագաւորութեանն լինել», «սահման տալով նմա զհիւսիսի և զարեւմուտս»։ Այլուր (Գիրք Ա. Գլ. Ը.) աւելի մանր կը յիշէ Վաղարշակայ տրուած երկիրներն յԱրշակայ, այսինքն «զմասն ինչ յարեւմտեայ Ասորւոց», «զՊաղեստին», «զԱսիա» (Սելեւկեանց երկիրը), «զբոլոր Միջերկրեայս» (Փոքր Ասիա), «զԹետալիա» (Թեսաղիա?), ի Պոնտոսէ մինչեւ ի Կասպից ծով, «ի ծովէն Պոնտոսի մինչեւ ի տեղին՝ ուր Կաւկաս յարեւմտեանն յանգի ծով», և «զԱտրպատական», միով բանիւ՝ «զկէս թագաւորութեան իւրոյ»։ Արշակ որպէս թէ բաւական չհամարելով զայսոսիկ՝ Վաղարշակայ կամաց և քաջութեան կը թողու ընդարձակել զտէրութիւն իւր. «Եւ այլ որչափ միտք քո և քաջութիւն հասանեն. զի սահմանք քաջաց զէնն իւրեանց, որքան հատանէ՝ այնքան ունի»։ Արշակ կ'որոշէ նաև այս նոր դուստր տէրութեան մայրաքաղաք զՄծբին, «քաղաք թագաւորութեան տալ նմա զՄծբին»։

Այս պատմութեան անտեղութիւնն ինքնին յայտնի է, մանաւանդ որոց գիտակ են քաղաքական հանգամանաց առաջակողման Ասիոյ յերկրորդ դարուն նախ քան զՔր.։ Զարեւմտեան մասն Ասորւոց, զՊաղեստին, զԱսիա, այն է զերկիր իշխանութեան Սելեւկեանց, բոլոր փոքր Ասիա, և այն ընդարձակ երկիրն ի ծովէն Պոն-

տոսի մինչև ի ծովն Պոնտոսի հանդերձ Ատրպատականաւ — գրեթէ ամբառ թագաւորութիւն մը — Վաղարշակայ պարգևելու համար՝ Հայոց էր Արշակայ ունել եթէ ոչ պատմենոյն տիեզերաց, որպէս ասէ ուրեք Խորենացին (գիրք Ա. գլ. Ը.)՝ գէթ, որպէս այլուր ասէ (գիրք Բ. գլ. Բ.)՝ երկրիս այն մասը որ կոչի Ասիա: «Արշակ տիրէ երրորդ մասին աշխարհիս, որպէս քրոնիկոնացն պատմութեանց Եբ-րայեցւոյ է ուսանել ի չորրորդէն, որ յաղագս բաժանելոյ զերե-լոյ երկիր յերիս մասունս, և կոչեալ զմին Եւրոպիէ (Եւրոպա), և զմին Լիբիէ (Ափրիկէ), և զմին Ասիա, *որում եւ տիրեաց Արշակ*» (Խոր. Բ. Բ.):

**18.** Արդ՝ Պարթևք երբէք չտիրեցին ոչ թէ աշխարհիս երրորդ մասին, այն է բոլոր Ասիոյ, այլ և ոչ այն երրորդ մասին երրորդին, մանաւանդ նախ քան զՔր. երկրորդ դարուն կիսուն. քանզի ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն, ինչպէս գիտեմն է մակաբերել ի ԿԸ. գլխոյ երկրորդ գրոց նորա՝ Վաղարշակայ թագաւորութեան ընծայուած թուականն է 166 նախ քան զՔր., առ Եպիփանեան Անտիոքաւ (174—164), մինչ դեռ Սելևկեանց իշխանութիւնը ոչ միայն կանգուն էր յԱսորիս՝ այլ և բաւական զօրաւոր, մինչև Դեմետրի Նիկանորայ արշաւել (143) յաղթանակաւ ի վերայ հզօրագունին ի թագաւորս Պարթևաց, Միհրդատայ Ա-ոյ, որ է Արշակ Զ, կամ Արշակ մեծ Խորենացւոյն, և եղբօր Դեմետրի, Անտիոքայ Սիդետեայ՝ ի վերայ յաջորդին Միհրդատայ, Հրահատայ Բ-ի որ է Արշակ Է: Ի Պաղեստին կը տիրէին Մակաբայեանք, Յուդա և Յովնաթան (166—144): Միջագետքը, Վերինն, ուր էին Մծբին, Եդեսիա և Ամիդ (Տիգրանակերտ)՝ էր դեռ ընդ իշխանութեամբ Սելևկեանց. առ Սիդետեան Անտիոքաւ (137), Միջագետաց այն մասը Միգդոնիա անուամբ եղաւ ինքնօրէն: Իսկ ի Փոքուն Ասիա թագաւորութիւնք, ինչպէս Պերգամոն, Բիւթանիա, Գաղատիա, Կապադովկիա, Պոնտոս, 190-էն հետէ ընդ պաշտպանութեամբ Հռոմայեցւոց՝ կը կազմէին դաշնակցութիւն մը, որում մասնակից էին նաև Հայք, Արտաքսիաս կամ Արտաշէս (Տես էջ 80)

**19.** Արդարև Միհրդատ Ա. (Արշակ Զ.), որ կը թուի լինել Խորենացւոյն Արշակ մեծն՝ ընդարձակեց Պարթևաց տէրութիւնը և հասաւ մինչև Եփրատ առ Դեմետրիւ Սոտերաւ (162—150), բայց այս յաջողութիւնը չտևեց երկար: Դեմետր Նիկատոր (146—125), որպէս ասացաք սակաւիկ մի յառաջ՝ վանեց զՄիհրդատ. և թէպէտ Դեմետր բռնուեցաւ գերի՝ բայց Պարթևք չհամարձակեցան այնուհետև, կամ չհամարեցան խոհեմութիւն, անցնել ըստ Տիգրիս Հռոմայեցւոց օրըստօրէ աճող զօրութեան դէմ յառաջակողման

Ասիոյ. աշխարհակալութիւն Պարթեւաց էր անդր քան զՏիգրիս։ Տիգրան մեծ (86—36) եղաւ առաջին, որ հանդերձ մեծաւն Միհրդատաւ ազգականաւ իւրով համարձակեցաւ ի վէճ գալ ընդ Հռոմայեցւոց, գրաւելով զՄիջագետս, զՊաղեստին, զԱսորիս և զՓոքր Ասիա։ Աւասիկ այն ընդարձակ տէրութիւնը, զոր ըստ Խորենացւոյն, որպէս թէ Արշակ մեծ պարգեւ տուաւ եղբօր իւրում Վաղարշակայ՝ չունի ամենևին պատմական հիմն, և չիք ուրեք յիշուած ի պատմագիրս, որ մերձաւորագոյն են ժամանակաւ քան զԽորենացին, նա՛ գրեթէ ժամանակակից, որպէս Պոլիբիոս և Ստրաբոն։

**20.** Բայց և այնպէս Խորենացին կ'ուզէ որ հաւատանք, թէ Վաղարշակայ Հայոց թագաւոր տուեալուն պատմութիւնը ժամանակակից աղբերէ է, այն է ի Մար Իբասայ։ Յայտնի է սակայն Վաղարշակայ պատմութեան գաղտնիքը։ Ամեն ազգ կամ ցեղ երևելի անձէ մը յառաջ եկած ցուցնել, որպէս արդէն ասացաւ՝ հին սովորութիւն էր, որ և շատ որոշ կը տեսնուի առ Խորենացւոյն։ Բուն Հայ ազգէն սկսեալ գրեթէ ամեն ցեղ կը գտնենք առ Խորենացւոյն անձէ մը սերեալ։ Այսպէս Հայը կը սերի ի Հայկայ, Բզնունին ի Բազայ, Խորխոռունին՝ ի Խոռայ, Արմէնն՝ յԱրամայ, Սիւնին՝ ի Սիսակայ, Ծանդակունին՝ ի Մխանդակայ, Ողկունին՝ ի Ոլաքայ, Գնունին՝ ի Գինայ, Վանանդեցին՝ ի Վընդայ, և ընդէր Արշակունին չսերէր Արշակէ մը. և ո՛ր Արշակ յարմարագոյն էր լինել նախահայր այս թագաւորական ցեղին, քան զԱրշակ մեծ։ Այս գաղափարը բաւական էր զԱրշակ մեծ առնելու տէր ամբողջ Ասիոյ, «երրորդ մասին աշխարհիս», և տալ նմա, աշխարհակալի մը անսովոր մեծանձնութեամբ՝ պարգեւել Հայոց « զկէս թագաւորութեան իւրոյ»։ Ապաքէն պիտի հաւատայինք, ինչպէս հաւատացին մեր նախնիք, թէ Արշակունիք յԱրշակայ էին՝ եթէ ժամանակակից պատմութիւնը չհերքէր այն տիեզերական աշխարհակալութիւնը, զոր Խորենացին կ'ընծայէ Արշակայ, ուստի և այն մեծ պարգեւը՝ որ տրուած կը պատմուի Հայոց. և եթէ դարձեալ պատմութիւնը և բանասիրութիւնը չգային մեկնել Արշակունի անունը, որ կ'ելլէ արդարև արշակ, այսինքն *արքայ*, *թագաւոր* բառէն, բայց ոչ Արշակայ անուանէն (տես էջ 83)։

**21.** Ծագմանէ Արշակունեաց ունիմք երկու աւանդութիւն, այսինքն այն, զոր կը պատմէ Խորենացին, որպէս տեսաք վերագոյնն, և այն, որ կը մակաբերուի ի պատմութենէն Պոլիբեայ և Ստրաբոնի։

Թէ ինչ աստիճան հաւատարմութեան արժանի են այս երկու պատմիչք՝ գիտել կարեւոր է մեր պատմութեան այս մասին հա-

մար։ Պողիբիոս ապրեցաւ նախ քան զՔր. Բ. դարուն սկիզբէն գը-րեթէ մինչև վերջը, քանզի ծնաւ 205-ին և մեռաւ ութսնամենի։ Իբրև պատմագիր ծաղկեցաւ Պողիբիոս ի ժամանակին, որ ընծայի Արշակայ և Վաղարշակայ։ Կրթեալ ի զինուորութեան ընդ ձեռամբ Փիլոպեմենայ զօրավարի Աքայեցւոց՝ գտնուեցաւ ի բազում ճա-կատս։ Բայց Պողիբիոս ոչ միայն զօրավար էր, այլ և իբրև դեսպան կամ պատանդ Աքայեցւոց կողմէն 17 տարի մնալով ի Հռոմ և բա-րեկամացեալ Էմիլեանց և Սկիպիոնեանց՝ այն դարուն առաջին աշ-խարհակալ ազգին քաղաքագիտութենէն ուսաւ բազում ինչ։ Պո-ղիբիոս յետ մնալոյ այնչափ տարի ի Հռոմ՝ շրջեցաւ յԵւրոպա, յԱփրիկէ և յԱսիա։ Յետ այսպիսի և այսչափ պատրաստութեան եկն Պողիբիոս ի գրել զիւր ընդհանուր պատմութիւն, ուր նախ քան զՔր. 220-էն սկսելով մինչև յիւր ժամանակ Հռոմայեցւոց պատմու-թեան առընթեր կը դնէ ուրիշ ժամանակակից ազգաց պատմու-թիւնը, դիտելով ի նոսա մանաւանդ զինուորական և դեսպանական գործողութիւններ, դիպաց պատճառներն և առիթը և զբոյս բարուց և զտաղանդս իշխանաց և պաշտօնէից։ Պողիբիոս կը պատմէ ճշդիւ, կը դատէ կորովաբար և կը յանդիմանէ անաչառ։ Համառօտ ասել՝ Պողիբիոս գրած կ'երևի քաղաքագիտաց, ռազմագիտաց և փիլիսոփայից։

Ոչինչ ընդհատ երևելի էր կրթութեամբ և հանճարով Ստրա-բոն, բազմահմուտն ի հին աշխարհագիրս։ Ծնեալ ի միջոցի Ա. դա-րուն նախ քան զՔր. յԱմասիա քաղաքի Կապադովկացւոց, յետ դաստիարակուելոյ ըստ արժանւոյն՝ շրջեցաւ յառաջակողման Ասի-ոյ, ի Յոյնս և յԻտալիա, կեցաւ երկար ժամանակ ի Հռոմ և մեռաւ ի վերջին ամս Տիբերի։ Ստրաբոն ունի Աշխարհագրութիւն յԺԷ. գիրս, որոց մեծագոյն մասն կայ։ Այս աշխարհագրութեան մէջ կը գտնուին ոչ սակաւ պատուական տեղեկութիւնք պատմականք։ Ժամանակ մը այնպէս մեծ էր անունն Ստրաբոնի յԵւրոպա՝ մինչև աշխարհագիր անուամբ իմանալ զնա միայն։ Մի միայն ստուգա-գոյն տեղեկութիւն զսկզբանէ երկրորդ Արարատեան թագաւորու-թեան կամ զԱրշակունեաց գտանեմք առ Ստրաբոնի. ստուգագոյն, քանզի Ստրաբոն ոչ միայն ժամանակակից և մօտ էր ժամանակաւ, այլ և դրացի մեզ։

**22.** Յերկրորդ դարուն նախ քան զՔր. կային ի Փոքրն Ասիա չորս կամ հինգ թագաւորութիւնք—Պերգամոն, Բիւթանիա, Գաղատիա, Կապադովկիա և Պոնտոս, ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց, մա-նաւանդ յետ ճակատուն Մագնեսեայ, այն է յետ պարտութեան Անտիոքայ մեծի (190)։ Պոնտոսի թագաւորը Փառնակ իբր 180-ին

նախ քան զՔր. սկսաւ ընդարձակել զաւրութիւն իւր, մեւս թագաւորաց երկիրներէն տեղեր գրաւելով։ Հռոմայեցիք որ այս տէրութեանց և ոչ միայն զօրանալը կ՚ուզէին՝ այլ. տարբին Փառնակայ քաշուիլ դրացի տէրութեանց երկիրներէն, միանգամայն խրատ տալով Պերգամոնի թագաւորին Եւմենեայ և Կապադովկիոյ թագաւորին Արիարաթայ՝ զօրօք մտանել Փառնակայ երկիրը։ «Նփաթեցաւ Փառնակ, ասէ Պոլիբիոս ժամանակակից, և յանձն առաւ որով և իցէ պայմանաւ ընդունել խաղաղութիւնը։ Ցեա երկուստեք բանագնաց լինելոյ բազմիցս ի ձեռն հրեշտակաց՝ կռեցան դաշինքն օրինակ զայս. «Խաղաղութիւն մշտնջենաւոր ի մէջ Եւմենեայ, Պրուսիասայ, Արիարաթայ, Փառնակայ և Միհրդատայ։ Փառնակ մի՛ դիցէ երբէք զոտն ի Գաղատիա։ Ամենայն դաշինք կռեալք ընդ Գաղատացիս եղիցին իբրև զչեղեալս։ Փառնակ ելցէ նաև ի Պափլագոնիոյ և դարձուսցէ անդր զբնակիչս երկրին զորս խախտեաց, նոյնպէս զզէնսն և զայլ ամենայն կազմած զոր առ անտի։ Զերկիրսն և զկահ և զկազմած և զպատանդսն զոր առ յԱրիարաթայ՝ դարձուսցէ ի նա. տացէ և զՏայիա, քաղաք փոքր մօտ ի Պոնտոս։ Արձակեսցէ զգերիս և զփախստեայս առանց փրկանաց, նաև զամենայն արծաթ և զինչս զոր հանեալ է ի Մորզիասայ և յԱրիարաթայ՝ տացէ, և հատուսցէ նոցա ինն հարիւր քանքար, երեք հարիւր ևս Եւմենեայ փոխանակ ծախուց պատերազմի, դարձեալ երեք հարիւր՝ Միհրդատայ կուսակալի փոքուն Հայոց»։ «Այս դաշնադրութեան մասնակից էր, կը յաւելու Պոլիբիոս, (վերին) Ասիոյ թագաւորներէն Արտաքսիաս (Արտաշէս), որ կը թագաւորէր ի վերայ մեծի մասին Հայոց (Մեծաց)։ Դաշնադրութեան մէջ նշանակուած էին նաև թիւ և պայմանք պատանդիցն զորս տալոց էր Փառնակ. և երբ եկան պատանդքն՝ մեկնեցաւ զօրն Եւմենեայ և Արիարաթայ, և այսպէս վերջացաւ պատերազմն» (Պոլիբ. դպր. ԻԶ. Հատւած. Դ.)։

Արդ այս դաշնադրութիւնը եղաւ 180-ին կամ ամաւ միով յետոյ նախ քան զՔր.։ Ապա յայտ է թէ երկրորդ դարուն կիսուն մօտ նախ քան զՔր., ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն իբր երեքտասան ամաւ յառաջ քան զկարծեցեալ թագաւորութիւնն Վաղարշակայ՝ կային ի Փոքրն Ասիա ծանուցեալ թագաւորութիւնք, բարեկամ և դաշնակից Հռոմայեցւոց, և թէ ի Հայս կը թագաւորէր յայնժամ Արտաքսիաս, այսինքն Արտաշէս ոմն, ինչպէս յայտնի է յանուանէն՝ ի բնակաց երկրին։ Որովհետև Վաղարշակայ ենթադրեալ թագաւորութեան թուականն է, ըստ հաշուոյ Խորենացւոյն, 166 նախ քան զՔր.՝ ապա հարկ է ենթադրել թէ տերեւն

Արշակայ մեծի բոլոր Ասիոյ, «երրորդ մասին աշխարհիս», եղաւ յառաջ քան զամն 166 նախ քան զՔր.։ Սակայն ի պատմութենէ Սելեւկեանց գիտենք, թէ Միհրդատ Ա., այն է Արշակ Զ. (Արշակ մեծ Խորենացւոյն), առ Դեմետրիւ Սովտերաւ (162—150) յառաջացաւ դէպ յԵփրատ, և առ Դեմետրիւ Նիկատորաւ, որդւով Սովտերայ (140—125) ստիպուեցաւ յետ քաշուիլ (143). և թէպէտ Դեմետր բռնուեցաւ գերի՝ Անտիոքոս Սիտիդէս եղբայր Դեմետրի յառաջ տարաւ պատերազմը մինչև ցմահն Միհրդատայ (139), և Պարթևք այնուհետև չանցան ընդ Եփրատ՝ բայց եթէ առ Կրասեաւ (54), երբ սկսան կրել յարձակումն ի Հռոմայեցւոց։ Տէրելն Արշակայ մեծի, ըստ Խորենացւոյն, բովանդակ Ասիոյ, «երրորդ մասին աշխարհիս», և տալն զարևմտեան Ասիա, «զկէս թագաւորութեան իւրոյ», Վաղարշակայ, եթէ էր ճշմարիտ՝ չէր կրնալ զանխուլ մնալ ի յոյն պատմագրաց, մանաւանդ ի Պողիբեայ, որ որպէս ասացաք՝ էր ժամանակակից։ Ոչ միայն զաշխարհակալութիւնն Արշակայ մեծի և զանուանս և զմեծամեծ արութիւնսն Վաղարշակայ և երկուց յաջորդաց նորա, Արշակայ և Արտաշիսի, յիշուած չենք գտներ այլուր՝ բայց միայն առ Խորենացւոյն՝ այլ և առ Ստրաբոնի, որ ժամանակակից էր Տիգրանայ մեծի՝ կը գտնենք զՏիգրան մեծ յիշուած իբրև ի յաջորդաց Արտաքսիասայ (Արտաշիսի) յիշելոյ ի Պողիբեայ։ Եթէ Տիգրան մեծ, որ էր Արշակունի ըստ ժամանակակից պատմութեան, էր սերունդ Արտաքսիասայ, և Արտաքսիաս էր բնիկ Հայ՝ ապա Արշակունիք ևս էին բնիկ Հայ, սերունդ Արտաքսիասայ, և ոչ Արշակայ Պարթևի, և կոչուած են արշակունի ո՛չ յանուն Արշակայ մեծի, իբրև սերունդ նորա, այլ իբրև թագաւորական ցեղ։ Արդարև կար աւանդութիւն առ Հայս, ինչպէս կը յիշեն ոչ միայն Խորենացին, այլ և Բուզանդ և Ագաթանգեղոս, թէ Արշակունիք ազգական էին Պարթևաց։ Բայց եթէ մանր միտ զննենք այս աւանդութեան պարագաները՝ կը տեսնենք որ Արշակունեաց ազգականութիւնն ուղղակի Պահլաւ ցեղին հետ էր։

Այսպէս առ Բուզանդայ և առ Նմին իսկ Խորենացւոյն միշտ Պահլաւ իշխանք կը կոչուին ազգականք Արշակունեաց։ Վասն Ալանայոզանայ Պահլաւի, զոր Տապուհ ղրկեց ի վերայ Արշակայ՝ ասէ Բուզանդ, թէ էր ի տոհմէն Արշակունեաց. «Ալանայոզանն որ Պահլաւն էր ի տոհմէն Արշակունեաց . . . գայր հասանէր ի սահմանս Հայոց» (Բուզ. Դ. ԼԸ.)։ Նոյնպէս վասն այլոյ պահլաւ իշխանի Սուրէն կոչեցելոյ ասէ, թէ էր ազգական Արշակայ. «Տապուհ արքայ Պարսից կազմէր պատրաստէր գունդս, և Սուրէն Պահլաւ, որ ազգակից էր Արշակայ թագաւորին Հայոց՝ առաջնորդ նոցա» (Բուզ.

Դ. ԼԳ.)։ Խորենացին նոյն Ալանայոզանայ ազգականութիւնը կը յիշէ ուրիշ կարևոր պարագայիւք. «Պարապ առեալ, ասէ, Տապհոյ ի պատերազմացն՝ առաքէ ի վերայ Արշակայ զԱլանաոզան ոմն Պահլաւիկ որ էր ազգակից Արշակայ։ . . . Ուստի տարակուսեալ Արշակայ՝ յղէ պատգամ (առ Ալանաոզան), եթէ Դու, արիւն իմ և հարազատութիւն, ընդէր այդպիսեաւ վարես զիս ջերմութեամբ. թէպէտ և ակամայ զգալուստ քո գիտեմ, ոչ կարացեալ սայթաքել զհրամանս Տապհոյ՝ գալ ի վերայ քո ազգականիս։ Այլ արդ թոյլացո ինձ զօրել ուրեք վայրկեան մի ժամանակի, մինչև ոգի առեալ անցանել կարացից յերկիրն Յունաց, և դու կալցես զաշխարհս, և բազմաց յինէն հանդիպեսցիս բարութեանց, որպէս ի մտերիմ հարազատէ։ Դարձուցանէ Ալանաոզանն այսպիսի պատասխանիս և ասէ. Թէ ու ոչ խնայեցեր յազգայինսն մեր Կամսարականս, որ առաւել քան զիս էին քո հարազատագոյնք, դենի ձեր մասամբ և աշխարհաւ համաբնակաւ, զիարդ յինէն ակն ունիցիս ի քեզ խնայել, հեռացեալ դենիւ և բնակութեամբ» (Խոր. Գ. ԼԴ.—Վասն Կամսարականաց տես էջ 87)։ Նաև Սուրէն զոմն Պահլաւ կը յիշէ Խորենացին իբրև ազգական Արշակունեաց, գիրք Գ. գլ. ԿԴ. և ԿԷ.։ Սա ևս արժանի է դիտողութեան, զի ոչ ուրեք ի հին պատմագիրս մեր, ոչ յառաջ քան զԽորենացին և ոչ առ Խորենացւոյն, Պարթևք կոչուած են երբէք Արշակունի, որպէս այլուր յիշեցաք (էջ 81). Պահլաւ (Քուշանաց) ցեղը միայն կոչուած է Արշակունի (Բուզ. Գ. Զ. և Է.։ Դ. ԼԳ.։ Ե. Է և ԼԷ.)։ Եթէ Հայ Արշակունիք, իբրև սերունդ Արշակայ մեծի Վաղարշակաւ, կոչուեցան Արշակունի՝ Պահլաւք, այսինքն Բահլի թագաւորական ցեղն ընդէր կը կոչուի Արշակունի. միթէ այս ցեղն ևս կը սերէր ի մեծէն Արշակայ։ (ԶԱրշակունեաց տես և էջ 81—87)։

**23.** Խորենացին յետ պատմելոյ յերկրորդ գլուխ Բ. գրոցն զտիրել Արշակայ բոլոր Ասիոյ, «երրորդ մասին աշխարհիս», և թագաւորեցուցանելոյ զՎաղարշակ «ի վերայ աշխարհիս մերոյ, զհիւսիսոյ և զարևմտւոս տալով նմա սահմանս»՝ կ'սկսի պատմել Վաղարշակայ գործերը։ Մեծագոյն արժանիք Վաղարշակայ եղև ըստ Խորենացւոյն, որպէս արդէն ասացաւ՝ յղել զՄար Իբաս առ եղբայրն իւր Արշակ բերել զպատմութիւն Հայոց ի դիւանէն Նինուէի։ Առ ի տալ կատարել Վաղարշակայ զայս գործ՝ հարկ էր նախ յարմարացնել պարագաները, որ կրնային թելադրել նմա և տալ ի գլուխ հանել զայն գործ։ Ուստի նախ՝ որպէս թէ Արշակ կանխաւ պատուէր կուտայ Վաղարշակայ «քաջութեան և իմաստութեան հոգ տանելոյ», և Վաղարշակ «չառնէ անփոյթ զխրատու նորա». Նաև

զՀայաստան, որպէս թէ կը գտնէ Վաղարշակ անկարգ և վայրենի.— «Ոչ կարգ ինչ լեալ աստ յայտնի—ասէ Վաղարշակ, ըստ Խորենացւոյն, ի նամակին իւրում առ Արշակ—և ոչ մեհենից պաշտամունք, և ոչ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է և ոչ վերջինն, և ոչ այլ ինչ օրինաւոր, այլ *խառն ի խուռն ամենայն եւ վայրենի*»։ Ապաքէն հարկ էր զայսոսիկ իբրև յառաջաբան դնել, որպէս զի հետևէր Վաղարշակայ ելանելն ի խնդիր Հայոց պատմութեան։ Դիտողութեան արժանի է սակայն, զի Խորենացին կուտայ Վաղարշակայ գտանել ի Հայս «խառն ի խուռն զամենայն և վայրենի», մինչ ըստ երկուց հաւատարիմ պատմագրաց, Պոլիբեայ և Ստրաբոնի, մին ժամանակակից և միւսն մօտ ժամանակաւ՝ արդէն նախ քան զՔր. երկրորդ դարուն գրեթէ կիսուն (188—168), Արտաքսիաս (Արտաշէս) կը հաստատէր ի Մեծն Հայս նոր թագաւորութիւն, բաւական մեծ՝ մինչև մտանել ի դաշնակցութիւն դրացի տէրութեանց Փոքուն Ասիոյ (էջ 233) և վայելել Հռոմայեցւոց բարեկամութիւնը, և կը շինէր ամրոցներ և քաղաքներ, մանաւանդ զպարսպաւորն Արտաշատ առ Երասխաւ, «մեծ և գեղեցիկ» ըստ Ստրաբոնի, և այս իբրև երեքտասան ամաւ միայն յառաջ քան զկարծեցեալ թուական թագաւորելոյ Վաղարշակայ ի վերայ Հայոց։

**24.** Վաղարշակայ պէս ուսումնասէր և իմաստուն թագաւորի ապաքէն վայել էր լինել նաև հզօր, քաջ, յաղթող, օրէնսդիր և աշխարհաշէն. և արդարև այսպէս կը նկարագրէ զնա Խորենացին. «Սա այր քաջ և խոհեմ, ընդարձակեաց ի վերայ սահմանաց իւրոց, և կարգս կենցաղականս, որչափ մարթ էր, սահմանեաց աշխարհիս, և նախարարութիւնս, և նոցին նախարարութեանց նահապետութիւնս հաստատեաց զարս պիտանիս» (Խոր. Բ. Գ.)։ Ուստի և ամբողջ վեց գլուխ կը նուիրէ Խորենացին Վաղարշակայ գործոց, որպէս ասէ, «*հաւաստի* պատմութեամբ լի, և արժանի բանից ողորկագունից և յոլովից» (Խոր. Բ. Է.)։

**25.** Յետ առաքելոյ զՄար Իբաս ի Նինուէ ի խնդիր պատմութեան Հայոց՝ առաջին երևելի գործ Վաղարշակայ լինի, ըստ Խորենացւոյն, սանձահարել զՄակեդոնացիս (զՍելևկեանս), և նուաճել պատերազմաւ հիւսիսային արևմտեան և արևմտեան (Փոքուն Ասիոյ) տէրութիւններն, զՂազիկա, զՊոնտոս, զՓռիւգիա, զՄաժաք և զայլս։ Զարմանալի է արդարև, զի Խորենացին, յետ ասելոյ թէ Արշակ տիրեց «երրորդ մասին աշխարհիս», այն է բոլոր Ասիոյ՝ տակաւին կանգուն կ'ենթադրէ Փոքուն Ասիոյ տէրութիւնները և զՄակեդոնացիս, այսինքն Ասորւոց կամ Սելևկեանց տէրութիւնը. քանզի ասէ թէ «Պոնտոս, Փռիւգիա, Մաժաք ոչ գի-

առնելով զհամ պատերազմին Արշակայ՝ առ Մակեդոնացւոց պետութիւնն զմիաբանութիւն դաշանցն հաստատուն պահէին։ Միթէ այս տէրութիւններն աշխարհիս երրորդ մասին (Ասիոյ) մէջ չէի՞ն, որում արդէն տիրած էր Արշակ։ Նոյնպէս յետ տալոյ Արշակայ պարգևել Վաղարշակայ «զԱսիա և զամենայն Միջերկրեայս», այսինքն Սելևկեանց երկիրները, կամ Խորենացւոյն բառով, զՄակեդոնացիս և զՓոքրն Ասիա՝ նորէն նոյն Վաղարշակայ կու տայ «սանձահարել զՄակեդոնացիս» և նուաճել Փոքուն Ասիոյ տէրութիւնները ծանր պատերազմաւ։

**26**. Խորենացին Վաղարշակայ դէմ ոսոխ կը յարուցանէ Մորփիւղիկէս անուն զոմն, որպէս ասէ՝ «այր սրտեայ, անդամովք երկար և ընդ իրեարս պաշտած, զոյգ մարմնոյն և ոյժ սաստիկ ունելով»։ Այս հսկայն, ըստ Խորենացւոյն, միաբանելով Փոքուն Ասիոյ կողմերը՝ «կը գրգռէ ի պատերազմ ընդ Վաղարշակայ»։ Վաղարշակ ժողովելով յԱտրպատականէ և ի Հայոց «քաջ և անուանի մարդիկ» (տես էջ 206), «որպէս թէ զկէս մասն աշխարհիս», յետ կրթելոյ զնոսա յԱրարատեան նահանգին, «ի միջոցի աշխարհիս վերագոյն քան զսկուռնս Մօրին մեծի յափն Երասխայ, զի ոչ գիտէին զկարգս ինչ»՝ կը յարձակի ի վերայ միաբանելոցն ընդ Մորփիւղիկեայ։ Պատերազմը կը սաստկանայ, Վաղարշակ կը վտանգի։ Մորփիւղիկէս կը «ձգէ զսուինն, քանզի էր կորովի և երկայնաձիգ, որպէս ի թռիչս սրաթև հաւուց», և մինչ մերձ էր ընկենուլ զարքայն՝ «արք քաջք և անուանիք ի զարմից Հայկայ և ասորեստանւոյն Սենեքերիմայ ընդ մէջ անցեալ՝ աշտէիւ հարեալ սատակեն զքաջն»։ Զօրքը կը ցրուի, վտակք արեան կ՚ողողեն զգետինն. բայց երկիրը կը խաղաղի ընդ ձեռամբ Վաղարշակայ, և Սելևկեանք կը դադրին ի պատերազմելոյ, «յայնմ հետէ դադարեալ խաղաղէր երկիրն՝ նուաճեալ ընդ ձեռամբ Վաղարշակայ, և Մակեդոնացւոցն դադարեալ զօռն»։

**27**. Այս մանր նկարագիրը, որ սովորական է հին ժամանակի պատերազմներուն՝ բաւական չէ պատմական հաստատութիւն տալ վերոյիշեալ պատմութեան. այս հաստատութիւնը մենք այն պատմութենէն դուրս կը փնտռենք։ Ի ժամանակին յորում Խորենացին նուաճեալ կը դնէ Փոքուն Ասիոյ տէրութիւններն ի ձեռն Վաղարշակայ՝ կը գտնենք զնոսա ի մեծի անդորրութեան և յապահովութեան։ Պատերազմ Փոքուն Ասիոյ տէրութեանց դէմ և նուաճումն յառաջ քան զՄիհրդատ մեծ՝ յիշուած չէ ուրեք ի ժամանակակից պատմութեան, և ոչ Հռոմայեցիք լուռ կը կենային որ և իցէ յարձակման դէմ ի վերայ թագաւորութեանց Փոքուն Ասիոյ, որոց չէ-

զօրութիւնն կարևոր էր յապահովութիւն նոր ստացուածոց նոցա ի Միջերկրականին և յԱսիա։ Ուստի անհնար էր Վաղարշակայ յարձակել ի վերայ տէրութեանց Փոքուն Ասիոյ առանց բռնուելոյ ի պատերազմ ընդ Հռոմայեցւոց, ինչպէս իբր ութսուն ամօք յետոյ քան զկարծեցեալ Թուական թագաւորութեան Վաղարշակայ դիպեցաւ Միհրդատայ և Տիգրանայ մեծի, որ փորձեցին տիրել Փոքուն Ասիոյ։ Խորենացին կու տայ, բոլորովին հակառակ քաղաքականութեան Հռոմայեցւոց, Փոքուն Ասիոյ տէրութեանց միաբանել ի նպաստ Սելևկեանց, ոսոխաց Հռոմայեցւոց, ընդ առաջնորդութեամբ Մորփիւղիկեայ, առանց ամենևին յիշելոյ, թէ ո՛վ էր այն Մորփիւղիկէս։ Փոքուն Ասիոյ տէրութիւնք զայնու ժամանակաւ ունէին առանձին թագաւորներ ի սերտ բարեկամութեան ընդ Հռոմայեցիս։ Ի Պերգամոն կը թագաւորէր Եւմենէս Բ. (197—159), ի Բիւթանիա՝ Պրուսիաս Բ. (192—148). ի Կապադովկիա՝ Արիարաթ Զ. (166—130), ի Պոնտոս՝ Փառնակ Բ. հաւ Միհրդատայ մեծի (186—157)։ Մորփիւղիկէս ո՞վ էր։ Ոմանք զՄորփիւղիկէս համարին լինել Միհրբարզան, յիշեալն ի Դիոդորոսէ Սիկեղացւոյ իբրև թագաւոր Ծոփաց (Չամչ. Պատմ. Հյ. հտ. Ա. 207). բայց Թուական սորա բազում ամօք յառաջ է քան զԹուական կարծեցեալ թագաւորութեանն Վաղարշակայ։ Գիտելի է ևս, զի Ծոփաց թագաւորութիւնը որ կը բաղկանար Մեծին Հայոց արևմտեան նահանգներէն (Չորրորդ և Բարձր Հայք)՝ տևեց մինչև Տիգրան մեծ, որ ըստ Ստրաբոնի ժամանակակից պատմագրի, ջնջելով այն փոքր թագաւորութիւնը՝ միացուց զՄեծ Հայս։ «Անդստին ի ժամանակէ Պարսից մինչև առ մեզ գտանեմք, զի Արմենիա յետ անկանելոյ ընդ Պարսիւք և ընդ Մակեդոնացւովք՝ անց ի ձեռս թագաւորաց Ասորւոց (Սելևկեանց) որոց վաղ իսկ տիրեալ էր Մարաց, այլ հուսկ ուրեմն երկոքին զօրավարք Անտիոքայ մեծի, բաժանեցան զերկիրն. սոքա կոչէին Արտաքսիաս և Զարիադրիս, որ յետ վարելոյ ի սկզբան զերկիրն յանուն Անտիոքայ, տեսեալ զտէր իւրեանց պարտեալ և նուաճեալ՝ ետուն ձեռս ի Հռոմայեցիս, և լեալ միահեծան առին զանուն թագաւորի։ Տիգրանէս ի զաւակէ Արտաքսիասայ, առ զմասն երկրին, որ ձգի առ Մարօք, Աղուանիւք և Վրօք մինչև ի Կողքիս և ի ծովեզերեայն Կապադովկիա։ Զայնու ժամանակաւ Արտանէս (ըստ այլոց՝ Արշակէս) ծոփացի, ի զարմէն Զարիադրեայ, ունէր զհարաւային, և մանաւանդ զարևմտեան հարաւային մասն Արմենիայ, այլ արկաւ յաթոռոյն և սպանաւ ի Տիգրանայ, որ եղև միահեծան տէր բովանդակ Մեծին Հայոց» (Ստրաբ. ԺԱ. 15)։

**28.** Զանհարազատութիւն պատմութեան պատերազմին Վա-

ղարշակայ կը մատնէ ուրիշ կէտ մը արժանի դիտողութեան, այն է ժամանակի կանխումը (anachronisme), որով Խորենացին զՆահապիվան, վերջին Արշակունեաց բանակատեղին, կը դնէ առ Վաղարշակաւ, քանզի հոն կու տայ նմա կեդրոնացնել զզօրս իւր։ Արդարեւ Խորենացին առ ի չտալոյ կասկած՝ կը լռէ Նահապիվան անունը, յայտնի է սակայն, թէ բանքն «մօտ յակունս Մօրին մեծի յափն Երասխայ»՝ կ'ակնարկեն զՆահապիվան։ Վերջապէս ըստ մեզ անտարակուսելի է, թէ պատմեալքն Խորենացւոյն զպատերազմաց Արշակայ և Վաղարշակայ կամ յետին և անստոյգ աղբերբ են, և կամ գիտմամբ հնարեալ։

**29.** Խորենացին յետ նուաճել տալոյ Վաղարշակայ «զհիւսիսի և զարեւմուտս»՝ ասէ. «Եւ այս այսպէս կատարեալ՝ կարգէ (Վաղարշակ) զկողմանս Մաժաքայ (Կապադովկեայ) և զՊոնտոս և զԵգերացիս» (Խոր. Բ. Զ.)։ Խորենացւոյն այսպէս «կարգէ» բառով միայն անցնելը կը ցուցնէ, թէ չունէր ինչ ի պատմել, և ինչպէս կրնար ունենալ, մինչ ոչ նուաճումն կար և ոչ Վաղարշակ. ուստի ինչպէս այլուր՝ նոյնպէս աստ կը ջանայ մթին բանիւք բարեքել իւր պատմութեան այս տկար կողմը։ Պարտ էր, ասէ, զսիրելի առնէն (զՎաղարշակայ) զամենայն ինչ մանր և յայտնի պատմել. բայց անցայ համառօտիւ առանց ոճոյ և կարգի, և այս ի սիրոյ զոր ունիմ առ նա. —«Այլ խառքեմ աստ վասն սիրելի առնն յայտնի գրել զամենայն և մանրապատում, զի անցի միայն զտեղիսն նշանակելով, զհաւատին և զոճն ի բաց թողեալ, վասն զկապ սիրոյ զհրաշալւոյն անխզելի պահելոյ» (Խոր. Բ. Զ.)։

**30.** Ցեառյ բերել տալով զՎաղարշակ ի կողմանս Տայոց՝ անդ, ինչպէս կ'երեւի կամելով Նամիրամայ նմանցնել զիւր դիւցազնն՝ կու տայ նմա շինել ամարանոցս, որսոյ տեղիս, այգիս և բուրաստանս, լեռներ հարթելով, դաշտերու և հովիտներու ջերմոտ օդը փոխելով ի բարեխառն և յառողջարար. —«Դառնայ (Վաղարշակ) առ ստորոտովն Պարխարայ ընդ մէջ Տայոց ի գիջին և ի մառախլուտ տեղիս մայրեացն և ի լոռաւէտս. գեղեցիկ իմն կարգելով զերկիրն, հաւասարելով զլեռնայինն և զջերմահոտն ի բարեխառն և ի զուգագեղեցիկ վայելչութիւն իւրոյ թագաւորութեան. ամառնային ժամանակին հովանոցս պատրաստելով, յորժամ զհիւսիսով երթիցէ։ Գոմս զերկուս տափարակսն անտառախիտս հանդերձ լերամբքն կազմելով և որսոց տեղիս, և զջերմութիւնն Կողայ՝ ի մարմանդս այգեաց և բուրաստանաց» (Խոր. Անդ.)։

**31.** Այս թերեւս կարելի էր, բայց քան զայս զարմանալին գործել կու տայ Խորենացին Վաղարշակայ։ Բոլոր Կովկասեան ազգերը

կոչել տալով—«Կոչեցեալ զվայրենի և եկամուտ ազգսն որ ի դաշտին Հիւսիսոյ և որ ստորոտով մեծի լերինն Կաւկասոյ, և որ ի Հովիտս կամ ի ձորս երկայնագոգս խորացեալս, ի լեռնէն որ զՀարաւով իջեալ մինչ ի դաշտաբերանն մեծ»—պարթևական ծանրութեամբ տալ կու տայ նմա այն վայրենիներուն սա միամիտ խրատը․ «Զաւազակութիւն և զմարդադաւութիւն ի բաց քեցել յինքեանց, և հրամանաց և հարկաց արքունի հպատակ լինել, որպէս զի միւսանգամ տեսեալ զնոսա՝ առաջնորդս և իշխանս հանդերձ գեղեցիկ կարգօք հաստատեսցէ» (Խոր. Անդ)։

**32.** Յետ այս *մեծամեծ* կարգաց՝ Խորենացին կու տայ իջանել Պարթևին «ի տեղիս խոտաւէտս մերձ ի սահմանս Շարայի», այն է ի կողմանս Վանանդայ, որ առաջ Անփայտ կամ Վերին Բասեան կը կոչուէր, և անտի ի սկզբան ձմերայնոյն, «ի ցրտանալ հիւսիսոյ ի դառնահոտ փչելոյ», դառնալ ի Շահապիվան, որպէս յայտ է ի նկարագրէն, «զափամբ Մօրին մեծի, ի տեղւոջ ուր գետն մեծ իջանէ և խառնի ի Մօրն մեծ»։ Աստ թողեալ Վաղարշակայ զօրս և վերակացուս, «կարգեալ զզօրս աշխարհիս և թողեալ յինքենէ վերակացուս՝ ինքն գլխաւորօք կու գայ Մծբին, «ուր առեալ զամենայն գլխաւորսն չուէ ի Մծբին», ուր կ'սկսին վարչական բարեկարգութիւնք։

Խորենացին այս բարեկարգութեան պատմութեան կը նուիրէ Բ. գրոցն երկայնագոյն գլուխներն, զեօթներորդն և զութերորդ, սա յառաջաբանով․ «Այս դրուագ մեծ, և հաւաստի պատմութեամբ լի, և արժանի բանից ողորկագունից և յոլովից։ Քանզի բազում ինչ աստ կարգաց և յօրինուածոց, տանց, ազգաց, քաղաքաց, շինից, դաստակերտաց, և համայն ասել օրէն թագաւորութեան և որ ինչ շուրջ զթագաւորութեամբն, զօրաց, զօրավարաց, կողմանց կողմնակալաց, և որ նման այսոցիկ»։ Այս յառաջաբանէն շատ բան կը յուսայինք լսել ի Խորենացւոյն զքաղաքային, վարչական և զինուորական կարգաց Վաղարշակայ․ սակայն մեր պատմիչն արևելեան արքունեաց քանի մը սովորական պաշտօններ, և Մեծին Հայոց բոլոր նախարարութիւններն հաստատել տալով Վաղարշակայ՝ կը վերջացնէ այն երկայն գլուխները։

**33.** Ըստ Խորենացւոյն՝ Վաղարշակ եղաւ առաջին, որ երկիրը բաժնեց ժառանգական նախարարութեանց, այսինքն սատրապութեանց, նահանգաց և գաւառաց, իւրաքանչիւր նախարարութեան երևելի անձ մը կարգելով նահապետ, այսինքն ցեղապետ կամ իշխան․—«Նախարարութիւնս, և նոցին նախարարութեանցն նահապետութիւնս հաստատեաց զարս պիտանիս»։ Այսպէս, ըստ Խորե-

նացուցն, Վաղարշակաւ կ'առնու Հայաստան այն ընդարձակ աւատային (féodal) դրութիւնը, որ այնչափ աղետալի եղաւ և պատճառ կործանման ազգին։ Չիք ուրեք սակայն յիշուած ի պատմութեան, թէ աւատային դրութիւն մը երբէք հաստատուեցաւ իբրև սահմանադրութիւն կամ վարչական օրէնք, այլ այս դրութիւնը ծագած է միշտ ի միանալոյ մանր մանր իշխանութեանց, յորոց ի սկըզբան կը բաղկանար ամէն համացեղ երկիր կամ թագաւորութիւն։ Ուստի շատ հաւանական է թէ նախարարութիւնք Հայոց, որոց իւրաքանչիւրն ունէր իբրև ժառանգական երկիր գաւառ կամ գաւառի մը մասը՝ քան զկարծեցեալ ժամանակն Վաղարշակայ շատ հին էին։ Բայց ենթադրելով ևս զՎաղարշակ իբրև պատմական անձ, առ ընդունելոյ Հայոց աւատային դրութիւնն իբրև վարչական օրէնք կամ սահմանադրութիւն հաստատեալ ի Վաղարշակայ՝ կը պահանջենք վաւերական աղբիւր։ Ուստի՞ կ'առնու Խորենացին նախարարութեանց ծագման համառօտ ուրուագիծը, զոր կու տայ մեզ վերայիշեալ երկու գլուխներուն մէջ։ Ունէ՞ր Խորենացին նախարարութեանց ծագումը և ազգահամարը ցուցնող տոհմային արձանագրութիւնները։ Միթէ գտա՞ւ առ Սահակայ Բագրատունւոյ գրաւոր կամ անգիր աւանդութիւն մը, թէ այս ցեղն էր ի Շամբաթայ, և առ Վաղարշակաւ եղև նախարարութիւն, կոչուելով Բագրատունի յանուն Շամբայ Բագարատայ հանդերձ թագադիր ասպետութեամբ։ Խորենացին այսպիսի աղբիւր մը չի ցուցներ վասն Բագրատունեաց, նա մանաւանդ ի նամակէ նորա առ Սահակ Բագրատունի կը տեսնուի, թէ այս վերջինն անգէտ էր պատմութեան իւրոյ ցեղին, և Խորենացին կը խոստանայ նմա տալ տեղեկութիւն զԲագրատունեաց։ Կը վերաբերիս, ասէ, «ազգի նախնականի, և քաջ և արգասաւոր՝ ոչ միայն ի բանս և ի պիտանաւոր խոհականութիւնս, այլ և ի մեծամեծ և ի բազում գործս արժանափառս, զորս յիշատակեսցուք ի կարգի պատմութեանս, յորժամ զորդի ի հօրէ ծննդաբանելով ազգաբանիցեմք զբովանդակն» (Խոր. Ա. Ա.)։ Կամ Գնունիք ունէ՞ին գրաւոր աւանդութիւն մը, թէ էին յորդւոց Սենեքերիմայ, և թէ Գնունի անունն առին ի Վաղարշակայ, վասն զի նախնին իւրեանց Գին կը մատուցանէր զԳինի թագաւորին։ Խորենացին այսպիսի ընտանի աղբիւրներ չի յիշեր, այլ յայտնապէս ասէ, թէ առաւ յունական պատմութիւններէ.—«Իսկ զՀայաստանեայցս նախարարութիւնս, զամենեցուն զուստն և զգլխորդն յայտնելով (յայտնեսցուք) համառօտ, որպէս հաւաստի ի յունականս ոմանս կայ պատմութիւնս» (Խոր. Ա. Ա.)։ Ո՞ր յունական պատմութիւնք էին, որ գիտէին Հայոց նախարարութեանց, փոքունց և աննշանից անգամ,

«զուստն և զգիարգն» հաւաստեաւ։ Խորենացին, դիտմամբ թէ յանդգէտս՝ կը ծածկէ այս յունական պատմութեանց հեղինակներուն անունները և ժամանակը. երկու գլխաւոր կէտք՝ զորս գիտել մեզ կարևոր էր։ Անաչառ քննադատութիւնը կասկածելի կը գտնէ այս լռութիւնը, մանաւանդ զի նախարարութեանց «ուստն և զիարգն», զորս կու տայ Խորենացին՝ չեն կրնար յունական աղբիւրներէ առնուած համարուիլ։ Յոյն մը չէր կրնար զՍպանդունին մեկնել «ի վերայ զենարանաց», զՀաւնունին՝ «բազէակալ բազէակիր», զՁիւնականն՝ «ամարանոցաց պահակս և ձիւնակիրս». և ոչ զԱրծրունիս ստուգաբանել *արծիւ ունիս*, որպէս թէ արծրունիք արծուիս կը կրէին առաջի թագաւորին, և զԳնունիս՝ *գինի ունիս*, վասն զի ընտիր և համեղ գինիներ պատրաստել առաջի թագաւորին այս ցեղին պաշտօնն էր։ Յունական պատմութեան գործ չէր նաև ըզՍզկունիս Սլաքէ մը հանելով՝ իբրև քաջ նետաձիգ որսալ տալ նըմա քօշս ի լերինս։ Արդարև Խորենացւոյն ճաշակին յարմար բառախաղեր, ինչպէս ինքն իսկ Խորենացին կը համարի, մինչ ի մեկնելն զՁիւնականն իբրև «ամարանոցաց պահակս և ձիւնակիրս» կը յաւելու—«Եթէ առ ցոփս ոչ ունիցիս»։

**34.** Ըստ Խորենացւոյն կամ թերևս ըստ կարծեցեալ յունական պատմութեանց՝ Վաղարշակ «յետ սանձահարելոյ զՄակեդոնացիս և դադարելոյ պատերազմացն», նախ և առաջին փոխարէն բարեաց հատուցանելով առնն զօրաւորի և իմաստնոյ, որ ի Հրէիցն Շամբատ Բագարատ՝ տայ նմա *իշխանութիւն* ազգաւ թագադիր լինել Արշակունեաց, և որ ի նմանէ ծնեալ ազգ՝ լինել յանուն նորա կոչմամբ Բագրատունիս։ «Քանզի այս Բագարատ—կը յաւելու պատմիչը—նախաձեռն ընծայ մատոյց զինքն Վաղարշակայ յառաջ քան զպատերազմն Արշակայ ընդ Մակեդոնացիսն»։ Այս համառօտ յիշատակութենէն սա կը հասկցուի, թէ Բագարատ, յառաջ քան զթագաւորելն Վաղարշակայ ի վերայ Հայոց, ծանօթ և օգնական լեալ էր նմա, և վասն այսր «յառաջագոյն անձնուէր ձեռնտուութեան առ թագաւորն» տրուեցաւ նմա «իշխել թագ ի գլուխ դնել թագաւորին»։ Խորենացին կամ յունական աղբիւր նորա թուի դիտմամբ մուծեալ այս «ձեռնտուութեան» պարագան ի պատմութիւն Վաղարշակայ, որպէս զի տալ տայ նմա թագադիր իշխանութիւնը Բագարատայ։ Բայց Վաղարշակ չունէր պէտս ոչ ձեռընտուութեան, քանզի պատրաստ առաւ թագաւորութիւնն յեղբօրէն, ըստ նմին Խորենացւոյ, և ոչ թագադիր ասպետի, քանզի արդէն թագաւոր էր և կարօտ չէր նորէն պսակուելու. վասն յաջորդաց իւրոց ևս չէր կրնար հաստատել այնպիսի իշխանութիւն մը,

քանզի իշխանէ մը Թագաւոր պսակուիլն էր Թագաւորութիւնն իբ-րև ի նմանէ ընկալեալ ճանաչել։ Արդարև Թագադիր ասպետէ մը պսակուիլ գրեթէ այս նշանակութիւնն ունէր առ Հայս։ Բայց զհա-ւանական պատճառ այսր տես էջ 170—179։

**35.** Վաղարշակ յետ կարգելոյ իւր Թագադիրս ի Հրէից՝ ի Հայրենակցաց նոցա Քանանացւոց կը կարգէ, ըստ Խորենացւոյն, «զզեցուցանողս իւր», կոչելով զնոսա Գնթունիս, անտարակոյս յանուն նախնոյն նոցա Քանանիդասայ (անուն կեղծ, վասն զի Քա-նանիդաս ոչ թէ անձի անուն է, այլ քանանացի բառին յունարէ-նը)։ Լաւ ևս լինէր, եթէ Խորենացին Գնիթ անուն ումն դնելով ի նորա անուանէն հանէր Գնթունին, բայց զիարդ և իցէ փախած է այս յուշագրութենէ Խորենացւոյն։ Զաւանդութենէն լինելոյ Բագրատունեաց և Գնթունեաց պաղեստինացիս՝ տես էջ 166.

**36.** Վաղարշակ, ասէ Խորենացին, Թիկնապահս կարգելով իւր «ի զաւակաց Խոռայ Հայկազնոյ՝ «զլուխ և նահապետ նոցա» կը կարգէ «զՄաղխազ ումն», բայց ցեղին հին Խոռխոռունի անու-նը կը պահէ։ Այս վերջին պարագան յաւելուլ հարկ էր, վասն զի Թիկնապահութեան ցեղը կը կոչուէր ընդհանրապէս Խոռխոռունի և ոչ Մաղխազունի։ Գիտելի է սակայն, զի այս հին սեմական բառը մաղխազ, համանուն հայերէն արքունի և պարսկերէն ոստան բա-ռերուն՝ երբ պաշտօնի անուն կը տրուէր ի վաղուց Խոռխոռու-նեաց ցեղէն Թիկնապահաց իշխանին (Բուզ. Դ. ԺԱ, և Ե. ԼԸ. ԽԳ.), ինչպէս ասպետ անունը Բագրատունիներէն Թագակապ իշխանին։ Թէ մաղխազ Թիկնապահութեան պաշտօնը ցուցնող հասարակ անուն էր՝ յայտնի է «մաղխազութիւն» (Ագաթ. ԾԺԲ. և ԾԻԶ.) ածանցէն։

**37.** Խորենացին յառաջին գիրս իւր ի գլուխ ԺԲ. խօսելով զԳառ-նկայ ումեմնէ Թոռանէ Գեղամայ՝ կը յիշէ լեալ ի զաւակէ նորա առ Արտաշիսիւ Թոռամբ Վաղարշակայ Վարժ կամ Վարաժ ումն քաջ որսորդ, զոր Արտաշէս կարգէ ի վերայ որսոց արքունի.—«Ի սորա (Գառնկայ) ծննդոց ասէ ուրեմն առ Արտաշիսիւ Թոռամբ Վաղար-շակայ ումն Վարժ անուն պատանի լեալ, աջող յորս եղջերուաց և այծեմանց և վարազուց, դիպաձգութեամբ նետից կորովի. զսա ի վերայ որսոց արքունեաց կարգէ, և շէնս պարգևէ նմա առ ե-զերբ գետոյն, որ անուանեալ կոչի Հրազդան, և ի սմանէ ասեն լի-նել զտունն Վարաժնունիս»։ Հոս (գիրք Բ. գլ. Է.), Խորենացին Վա-ղարշակայ կու տայ կարգել «ի վերայ որսոց արքունականաց ոչ զՎարժ, այլ զհայր նորա Դատ»։ Իսկ զԴատ ի զաւակէ Գառնկայ որ ի Գեղամայ, ի վերայ որսոց արքունականաց կարգէ»։ Բայց զարմանք է զի Վաղարշակ Դատայ ցեղը չի հաստատեր նախարա-

րութիւն յանուն նորա կոչելով, այլ յետոյ ուրեմն թոռն նորա Արտաշէս զորդի Դատայ զՎարժ կարգելով «ի վերայ որսոց արքունականաց»՝ կ'անուանէ նախարարութիւն․ և որովհետև Վարժ էր քաջ նետող՝ Արտաշէս կը յանձնէ նմա զորդի իւր զՏիգրան կրթել ի նետաձգութիւն.—«Արտաշէս տայ զՏիգրան զորդի իւր ցպատանի ումն Վարաժ անուն, որդի Դատայ, որ ի զաւակէ Գառնկայ որ ի Գեղամայ, քանզի էր պատանին նշաւակ ի նետաձգութիւն կորովութեան, ուսուցանել զՏիգրան։ Զնա (զՎարաժ) իշխան արքունականացն արարեալ որսոց, և շէնս պարգևեալ նմա առ Հրազդան գետով՝ յանուն նորա կոչի ազգն Վարաժնունի» (Խոր. Բ. ԺԱ.)։ Վարաժնունի անուամբ ազգ կամ նախարարութիւն յիշուած չէք ուրեք։ Վարաժնունի անուամբ երեք գաւառք կը յիշուին յաշխարհագրութեան, որ ընծայի Խորենացւոյն, մին՝ ի Տարուբերան նահանգին, միւսն՝ ի Վասպուրականի, և երրորդն յԱրարատ։ Այս վերջինը կ'ակնարկեն բանք Խորենացւոյն։

Վարաժ անունը մօտ է ի Վարազ, ուստի Վարաժ լինի քաջ որսորդ վարազուց, և հարկաւ նաև քաջ նետաձիգ, արժանի կարգելոյ յԱրտաշիսէ ուսուցիչ Տիգրանայ, մեծին ի թագաւորս Հայոց։ Բնական էր տալ սերել զՎարաժ ի Գառնկայ, քանզի Վարաժնունեն գաւառ առ Հրազդան գետով մօտ էր ի Գառնի։ Եւ որովհետև Վաղարշակ է հաստատիչ բոլոր նախարարութեանց՝ հայր մը կը ստեղծուի Վարաժայ, Դատ, որ կը կարգուի ի վերայ որսոց արքունականաց, առանց արժանանալու նախարարական պատուոյ, քանզի Վարաժնունի է գաւառը և ոչ Դատունի։ Զայս իբրեւ թելադրութիւն կը գնենք. կ'ընդունինք սակայն թէ Խորենացւոյն տեղեկութիւնն զՎարաժայ կրնայ առնուիլ իբրև պատմական, միայն զարմանալի է թէ ուստի՛ և զիա՛րդ գտաւ Խորենացին թէ աննշան գաւառի մը նախնին Դատ առ Վաղարշակաւ կը սերէր իբրև հազար հինգ հարիւր տարի առաջ ապրող անձէ մը, որպիսի էր Գառնիկ։

**38.** Խորենացին յետ տալոյ Վաղարշակայ կարգել զԳաբաղ ումն ի վերայ կուտից, և զԱբէլ՝ սպասարար և գահաւոր, յորոց սերին նախարարութիւնքն Գաբեղէն և Աբեղէն, յետ կարգելոյ նաև զԱրծրունիս իբրև արծիւ ունիս, զԳնունիս իբրև գինի ունիս, և հաւանականապէս, որպէս ասէ Խորենացին, ի վերայ զէնարանաց՝ զՍպանդունիս, բազէակիրս և բազէակալս՝ զՀաւենունիս, և ձիւնակիր՝ զՁիւնականս՝—կուտայ նմա հոգալ պալատան ապահովութիւնը, կարգելով գունդս չորս «պահապանս դրան արքունի» ի զարմից առաջին թագաւորաց Հայոց։

**39.** Յետ այսորիկ Խորենացին հաստատել կու տայ մարզպետու-

թիւնն, այսինքն ներքինապետութիւնը, որպէս թէ չկար առաջ ներքինի խզելու սովորութիւնն ի Հայս, և Վաղարշակ եղաւ առաջին, որ խզել տուաւ ներքինիս ի զարմից նոյն առաջին թագաւորաց Հայոց. այսու կը ցուցնէ սակայն, թէ շատ հին էր մարդպետութեան ցեղն ի Հայս, անդստին ի ժամանակէ Արարատեան թագաւորութեան։ Բուզանդ յայտնապէս ասէ, թէ մարդպետութիւնը կար «ի բնէ ժամանակաց»։ Խորենացին յետ ասելոյ, թէ Վաղարշակ «ներքինիս հրամայէ խզել» ի հին զարմից Հայոց, և նահապետ կարգէ նոցա «զՀայր իշխանն մասին յԱտրպատականէ մինչև ցձուաշ և Նախճաւան՝ կը թուի ցաւել որ այս նախարարին պատմութիւնը մնացած էր անյիշատակ. «բայց թէ ո՛րպէս և ո՛ւր սորա իրք անցին անյիշատակելի, ես ոչ գիտեմ»։

Մարդպետք կը կոչուէին ընդհանուր անուամբ Հայր։ Խորենացին Հայր անունը կը համարի իբրև յատուկ անուն առաջնոյ մարդպետին. «Եւ նահապետ կարգէ նոցա (ներքինեաց) զՀայր իշխանն մասին յԱտրպատականէ մինչև ցձուաշ և Նախճաւան»։ Բայց պատուոյ սակս կամ պաշտօնին ազգաւ կը տրուէր նոցա այս անունը, որպէս ասէ իսկ Բուզանդ, թէ մարդպետն «անուանեալ կոչէր ըստ զործոյն՝ Հայր թագաւորին»։

**40.** Վաղարշակ, ըստ Խորենացւոյն, «յետ կարգելոյ զաւուն թագաւորին»՝ կը կարգէ «երկրորդ թագաւորութեան» Մուրացան կոչուած ազգէն, զոր Խորենացին կը համարի սերունդ «Աժդահակայ Մարաց եղելոյ թագաւորին», զորոյ զկինն և զորդիս, ըստ Խորենացւոյն, իբրև գերի բերելով բնակեցուցած էր Տիգրան «յարևելեայ ուսոց մեծի լերինն» (Մասեաց), յետ յաղթելոյ Աժդահակայ և ջնջելոյ Մարաց թագաւորութիւնը։ Թէ Մուրացանք մար էին՝ անտի յայտ է, ասէ Խորենացին, զի «նահապետի ազգին ասեն Մարացւոց տէր», թէպէտ ազգը կը կոչուի Մուրացան (Խոր. Բ. Ը.)։ Աժդահակայ զարմին գերութիւնն առ Տիգրանաւ պատմական չէ (տես էջ 195). ստոյգ է սակայն թէ Մասեաց արևելեան կողման բնակիչք էին ի բնէ մար, և նահապետ նոցա ունէր պատիւ մեծ առ Արշակունեօք, իբրև երկրորդ թագաւորութեան։ Ստուգիւ յայտնի չէ, թէ ինչ էր «երկրորդ թագաւորութեան լինել», կամ ունել «զգահն երկրորդական», կը թուի սակայն թէ կը նշանակէ զկնի թագաւորին առաջին բարձն ունել։ Հաւանական է, թէ յետ առնլոյ Արշակունի թագաւորաց, յառաջ քան զՏիգրան կամ առ Տիգրանաւ, զարևելեան նահանգսն ի Պարթևաց (Մարաբ. ԺԱ. 5. Բուզ. Ե. ԺԳ. ԺԵ.)՝ Մարք համարեցան երկրորդեայ Արշակունի ցեղին, և ժամանակ մը մեծ դեր խաղացին առ

Արգամաւ (ըստ վիպասանաց՝ Արգաւան) նահապետաւ իւրեանց, որպէս ակնարկեն երգք վիպասանաց (Խոր. Ա. Լ. Բ. ԾԱ.)։ Ըստ Խորենացւոյն՝ Երուանդ, նախորդ Արտաշիսի, դարձուց յԱրգամ երկրորդական գահը, զոր Տիգրան մեծ հանելով ի նմանէ տուած էր քեռորն իւրում Միհրդատայ (Խոր. Բ. ԽԴ.), և Արտաշէս ոչ միայն պահեց նմա երկրորդական գահը՝ այլ և ետ նմա «պսակ յակնթական, և գինդ յերկոսին ականջսն, և կարմիր զգեստ միոյ ոտինն, դարգալ ունել ոսկի և պատառաքաղ, և ոսկեզինօք ըմպել նուագօք» (Խորեն. Բ. ԽԵ.)։ Մուրացան նահապետութիւնը բարձաւ առ նովին իսկ Արտաշիսիւ այլ և այլ կասկածանաց պատճառաւ, որպէս տեսցուք ի կարգի պատմութեան։

Թէ առաջին Արշակունիք ընդարձակեցին զսահմանս իւրեանց որ ի սկզբան չէր այնչափ մեծ՝ կ'ակնարկէ Բուզանդ ասելով, թէ Կուր գետ վաղուց սահման դրուած էր ի մէջ Հայոց և ի մէջ Վրաց և Աղուանից։ Բայց Ստրաբոն իբր ծանօթ դէպք՝ մանր կը պատմէ Արշակունեաց տէրութեան ընդարձակութիւն, յետ ազատելոյ նոցա ի լծոյ Սելևկեանց, յանուանէ յիշելով նուաճեալ գաւառներն, և ազգերն որոց կը վերաբերէին այն գաւառք. «Ուսանիմք, ասէ ի պատմութենէ, զի Արմենիա, որ չէր զառաջինն այնպէս մեծատարած, ընդարձակեցաւ մանաւանդ աշխարհակալութեամբ նախնի կուսակալաց Անտիոքայ մեծի, Արտաքսիասայ և Զարիադրեայ, որոց յետ անկման տեառն իւրեանց դիպող համարեալ թագաւորել, մին ի վերայ Ծոփաց, Անձտայ և Որմանդեայ և գաւառաց շուրջանակի, և միւսն ի վերայ նահանգին Արտաշատայ (Արարատայ), և զուն գործեալ միաբան կորզել գաւառս յարուարձաննեալ ազգաց՝ հանին մի զմիոյ կնի, ի Մարաց՝ զԿազբս, զՀաբանդ և զՎասպուրական, ի Վրաց՝ որ ինչ առ ստորոտովն Պարխարայ հանդերձ Խորձենաւ և զԳուգարս յայսկոյս Կուր գետոյ, ի Խաղտեաց և ի Մոսինեքաց՝ զԿարին և զԴերջան, գաւառք որ այժմ սահմանակից են Փոքուն Հայոց, եթէ չեն մասն նորա, ի Կատաւոնաց՝ զԵկեղեաց և զամենայն գաւառն Անտիտաւրոսի, հուսկ ուրեմն յԱսորւոց՝ զՏարոն. ամենեքին՝ գաւառք, որոց բնակիչք այսր միութեան ազգաւ խօսին այժմ զմի և զնոյն լեզու» (Ստր. ԺԱ. 5)։

**41**. Ապաքէն վայել էր Վաղարշակայ կացուցանել յապահովի նաև զսահմանս տէրութեան իւրոյ։ Խորենացին զայս ևս տայ առնել Վաղարշակայ, տալով նմա հաստատել զբնաւորական իշխանութիւններ, կամ նորին իսկ Խորենացւոյն բառով «կողմնակալութիւնս», Հայաստանի սահմանագլուխներն, «ի ծայրս հայերէն խօսից»։

*Ցարևմտից կողմանէ* զՍիսակեանս և զԿադմեանս։ Սիսակեանք

էին Սիւնիք, վերջին արեւելեան նահանգ Հայոց։ Իսկ Կադմեան կ՚անուանէ Խորենացին զսերունդ Կադմոսի, որ ըստ Մար Իբասայ՝ էր որդի Արմենակայ, թոռն Հայկայ, ծնեալ ի Բաբելոն (Խոր. Ա. Ժ.). Բայց ոչ զԿադմոս և ոչ զԿադմեանս, իբր նախարարութիւն կամ ցեղ, կը գտնենք ուրեք յիշուած ի պատմագիրս մեր յառաջ քան զԽորենացին։ Մար Իբասայ պատմական յարգն արդէն ցուցուեցաւ ի Ե. գլուխ գրոցս։

**42.** *Յարեւելից Հիւսիսոյ* «կողմնակալ բիւրաւոր» զԱռան ոմն, «ի ծննդոց Սիսակայ»։ Խորենացին յառաջին գիրս իւր (գլ. ԺԲ.) խօսելով զՍիսակայ՝ ասէ. «Ի սորա (Սիսակայ) ծննդոց աստ ուրեմն Վաղարշակ, որ առաջին ի Պարթեւաց արքայ Հայոց, գտեալ արս անուանիս՝ տեարս աշխարհին կարգէ, որ է Սիսականդ ազգ, և զայս առնէ Վաղարշակ *ի պատմութենէն ստուգեալ*։ Այլ այս թէ ո՛րպէս է՝ յիւրում ժամու պատմեսցուք»։ Խորենացին հոս, յԸ. գլուխ երկրորդ գրոցն, իբր թէ կատարելով այս խոստումը՝ կը յիշէ իբրև սերունդ Սիսակայ զԱռան, «մեծ և անուանի և բազմաբիւր», այսինքն բիւրաւոր զօրաց տէր, «յամենայն գործ մտաւորութեան և հանճարոյ առաջին», և կարգել կու տայ զնա Վաղարշակայ «կողմնակալ բիւրաւոր» ո՛չ Սիսական աշխարհին, այլ Աղուանից, զորս կը պատմէ սերեալ ի Սիսակայ.—«Բայց զայս գիտեա, զի զցեղս զայս մեծ և անուանի՝ մոռացումն եղև մեզ յառաջին մատենին յիշատակել, զգունդս Սիսական, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից և զլեռնակողմն նորին դաշտի, և ի գետոյն Երասխայ մինչև ցԱմուրն որ ասի Հնարակերտ. և աշխարհն յանուն քաղցրութեան բարուց նորա կոչեցաւ Աղուանք, զի աղու ձայնէին զնա»։ Ամուրն Հնարակերտ թուի լինել ամուր բերդ ի կրճին, որ կոչէր Դուռն Ալանաց կամ Կապան Ճորայ։ Այսպէս Աղուանք, որ էին Սկիւթացի, Մասքութ (Ագաթ. ԾԻՁ. Բուզ. Գ. Ե.), արդի գիտնական բառով՝ Դուրանեան կամ Արիոյ—Դուրանեան՝ լինին համացեղ ընդ Հայս։ (ՁԱղուանից տես էջ 149—152)։ Վաղարշակ, ըստ Խորենացւոյն, «ի պատմութենէ»՝, կամի ասել՝ յաւանդութենէ երկրին, «ստուգեալ, թէ Առան էր «ի ծննդոց» Սիսակայ՝ կարգեց զնա կողմնակալ։ Արդարև զարմանալի է, զի Աղուանից պէս բարբարոս ժողովուրդ մը, անգիր և առանց դպրութեան՝ կը պահէր, ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն, իբր հազար հինգ հարիւր տարուան աւանդութիւն մը, որպիսի էր աւանդութիւնն սերելոյ Առանայ ի Սիսակայ։

**43.** Վաղարշակ, ըստ Խորենացւոյն, Շարայի սերունդէն (էջ 210) Գուշարայ անուն ումեմն տուաւ ժառանգութիւն Կանգարք

կոչուած գաւառն առ Մթին լերամբ, Ջաւախաց կէսը, և զգաւառսն Կողբ, Ծոբ և Ձոր մինչև ցամուրն Հնարակերտ։ Այս Գուշարայ մեծ և հզօր ցեղը կարգեց Վաղարշակ կողմնակալ հիւսիսոյ ընդդէմ «լերինն Կաւկասայ», «բդեշխ Գուգարացւոց» կոչելով զնահապետ նոցա որ էր Գարեհի նախարարին Միհրդատայ ցեղէն։ Նոյն Գուշարայ առհմէն ուրիշներ կարգեց Վաղարշակ տէր Աշոցայ և Տաշրայ.—«Իսկ Գուշարայ, որ յորդւոցն Շարայի՝ ժառանգեաց (ժառանգեցոյց Վաղարշակ) զլեառնն մթին, որ է Կանգարք, և զկէս մասինն Ջաւախաց, զԿողբ, զԾոբ, զՁոր մինչև ցամուրն Հնարակերտ։ Բայց զտէրութիւնն Աշոցայ և զսեպհականութիւնն Տաշրայ կարգէ Վաղարշակ ի զաւակայ Գուշարայ Հայկազնոյ։ Իսկ ընդդէմ լերինն Կաւկասայ կողմնակալ հիւսիսոյ կարգէ զմեծ և զհզօր ազգն (Գուգարաց), և նահապետութեան անուն կարգեալ՝ բդեշխ Գուգարացւոց, որ էր լեալ ի զաւակէ Միհրդատայ, Դարեհի նախարարի» (Խոր. Բ. Ը.)։

Լեառն Մթին կամ Սառրին Կովկաս կը կոչուէր գօտին լերանց ի մէջ Կուր գետոյ և մեծի գօտւոյն Կովկասու (տես էջ 9)։ Իսկ Կանգարք էր հիւսիսային գաւառ Գուգարք կոչուած նահանգին Հայոց (Փարպ. ՀԳ.)։ Նոյնպէս Կողբ, Ծոբ, Ձոր էին գաւառք նոյն նահանգին։ Իսկ Տաշիր էր հարաւային գաւառ Գուգարաց, սահմանակից Արարատեան գաւառին Աշոցայ։ Ըստ Խորենացւոյն՝ բնակիչք այս գաւառաց էին սերունդք Շարայի, ուստի և համազգի Հայոց, քանզի Շարայ, հուչակեալն յերգս վիպասանաց իբր շատակեր և յոլովածին՝ էր ըստ Խորենացւոյն որդի Արմայիսայ, թոռնորդի Հայկայ (տես էջ 101)։ ԵՒ առ Վաղարշակաւ կոչեցան Գուգարք յանուն Գուշարայ, որ էր նոյն Շարայի սերունդէն և վերոյիշեալ գաւառաց մեծ մասն առաւ ժառանգութիւն ի Վաղարշակայ։ Գիտելի է սակայն, զի ըստ Ստրաբոնի և այլ հին աշխարհագրաց՝ Գուգարք, Γωγαρήνη կը կոչուէր Վրաց երկիրն, որ կը ձգուէր ի Մթին լեռնէն մինչև Երասխ, և ազգն էր Դուրանս—Արիական իբրև զԱղուանս, ինչպէս յայտնի է նաև հին վրացերէն լեզուէն։ Ինչպէս Աղուանք՝ նոյնպէս Գուգարք հաւանականապէս առ Արշակունեօք, երբ Կուր գետ որոշուեցաւ սահման Մեծին Հայոց ի հիւսիսոյ (Բուզ. Ե. ԺԳ, ԺԵ.)՝ բաժնուեցան երկու, այսինքն բուն կամ հիւսիսային Գուգարք յայնկոյս Կուր գետոյ, իբրև ուրոյն թագաւորութիւն, և հարաւային Գուգարք յայսկոյս նորին գետոյ իբրև նահանգ Մեծին Հայոց և ընդ իշխանութեամբ Արշակունեաց։ Նահանգին իշխանը կը կոչուէր բդեշխ, թէպէտ ոմանք ի գաւառաց, ինչպէս Կող, Ձոր և Տաշիր՝ տէր կոչուած ուրոյն իշխաններու կը վերաբերէին (Բուզ. Դ.

Ծ.), և էին հաւանականապէս ընդ վերին իշխանութեամբ բդեշխին (Խորեն. Բ. Ը.)։

Խորենացին զՎիրս կը դնէ իբրև զատ ցեղ ի Գուգարաց, և կը համարի գաղթականս կամ գերիս, զորս որպէս թէ Նաբուգոդոնոսոր բերելով յԻբերիոյ որ ի Սպանիա՝ բնակեցոյց յաջակողմն Պոնտոսի, այսինքն ի Գուգարս, ըստ Մեգասթենեայ յոյն պատմագրի։ Մեգասթենեայ այս հատուածը կը բերէ Եւսեբիոս ի Քրոնիկոնին, յորոյ հայերէն թարգմանութենէն կ'առնու Խորենացին հանդերձ սխալով հայ թարգմանչին Քրոնիկոնի, իբրև յԱբիւդենոսէ (տես էջ 134)։ Խորենացին ոչ միայն այս սխալը կը գործէ, այլև Վրաց բդեշխը կարգել կու տայ Վաղարշակայ զՄիհրդատ, զհայր կամ ըզհաւ մեծին Միհրդատայ, որում յետոյ Տիգրան մեծ կը յանձնէ, ըստ Խորենացւոյն, զԿապադովկիա և զՓոքրն Ասիա (Խոր. Բ. ԺԴ.)։ Բայց ոչ մեծն Միհրդատ և ոչ հայր և հաւ նորա բդեշխք էին Վրաց, այլ ի նախնեաց հետէ թագաւորք Պոնտոսի։ Նոյնպէս լինելն Վրաց իբերացի գաղթականութիւն տարեալ ի Սպանիայ ի ձեռն Նաբուգոդոնոսորայ՝ թուի լինել հիմնեալ ի վերայ նոյնութեան անուան, և չունի պատմական հիմն։ Զվրաց տես և էջ 151։

**44**. *Արեւմտեան սահմանը* կը յանձնուի, ըստ Խորենացւոյն, Անգեղ տան։ Խորենացին յառաջին գիրս իւր (գլ. ԻԳ.) յիշելով Պասքամ զոմն թոռն Հայկակայ՝ ի նմանէ կը պատմէ սերեալ զԱնգեղ տունն, և այս պատմութիւնը որպէս թէ կ'առնու ի Մար Իբասայ. «ԶԱնգեղ տունն ասէ նոյն պատմագիր (Մար Իբաս) ի Պասքամայ ումեմնէ, ի Հայկակայ թոռնէ լինել»։ Այս Հայկակ էր, ըստ Խորենացւոյն, նախարդ Երուանդայ, հօր Տիգրանայ Հայկազնոյ (տես էջ 113)։ Ապա Մար Իբաս յանուանեալ քաղդէական մատենին զատ արձանագրեալ զանուանս ոչ միայն Հայկազուն իշխանաց և թագաւորաց, այլև որդւոց և թոռանց նոցա։ Զիարդ և իցէ այս՝ Խորենացին զԱնգեղ տունն իբրև նախարարութիւն ի Վաղարշակայ կը դնէ հաստատեալ։ Վաղարշակ, ասէ, յիշեալ Պասքամայ, Հայկակայ թոռին սերունդէն Տորք անուն զոմն, տգեղ յոյժ՝ հաստատեց կուսակալ արևմտից, և յանպիտանութենէ երեսացն զանուն ազգին կոչեց Անգեղ տուն։ Բայց Տորք ոչ միայն տգեղ էր, այլև անհնարին ուժեղ, մինչև կարծր քարեր որ ամենևին ճեղութիւն չունէին, բռնելով կը ճեղքէր մեծ և փոքր ըստ կամաց և եղնգամբ հարթելով իբրև տախտակ՝ կը գրէր ի վերայ արծուիս և այլ պատկերներ։ Անգամ մը Պոնտոս ծովուն եզերքը յարձակեցաւ ի վերայ նաւատորմղի թշնամեաց, և երբ նաւերը խաղացին դէպ ի խորն՝ Տորք չկրնալով հասնիլ, բլրաձև քարեր նետեց ծո-

պէտ Խորենացին լռութեամբ կ'անցնի բդեշխութեան բուն անունը՝ յիշուած երկիրներէն յայտնի է սակայն, թէ Աղձնեաց բդեշխութիւնն էր։ Սանասար, կամ ըստ Հրէից Սարասար՝ էր Սենեքերիմայ որդւոց մին, զորմէ խօսելով Խորենացին յառաջին գիրս իւր (գլ. ԻԳ.) ասէ. «Սկայորդին մեր քաջ նախնին բնակեցոյց յարեւմտից հարաւոյ աշխարհիս, և ի սմանէ սերեալ լցին զՍիմն ասացեալ լեառն. իսկ պերճքն և գլխաւորքն ի նոցանէ յետոյ ուրեմն մտերմութիւն վաստակոց առ թագաւորսն մեր ցուցեալ՝ զբդեշխութիւն կողմանցն արժանաւորեցան առնուլ»։ Դիտողութեան արժանի է սակայն, զի մինչ Խորենացին զԱղձնիս կու տայ սերել ի Սանասարայ և զԱրծրունիս յԱդրամելէքայ՝ Տաւասպ Արծրունի ընդ հակառակն զԱրծրունեաց ասէ լինել «ի սերմանէ Սանասարայ (տես էջ 168)։ Հոս կը հարցնենք դարձեալ. Ո՞ւր գրուած գտաւ Խորենացին, թէ Տարաշան ոմն կար առ Վաղարշակաւ իբր վեցհարիւր ամօք յառաջ քան զԽորենացին, և թէ այս Տարաշան էր «ի տանէ Սանասարայ»։ Միթէ Աղձնեաց տո՞հմն ևս ունէր հազար հինգ հարիւր տարուան ազգահամար մը, աւանդութեամբ հասեալ ի հարց և ի հաւուց։

**46.** Խորենացին վերոյիշեալ սահմանագլուխ իշխանութիւնները դնելով անձամբ կը ջրէ ինչ որ առաջ գրած էր զսահմանաց թագաւորութեան Վաղարշակայ։ Արդարև Սիւնիք յարևելից, Աղուանք և Վիրք ի հիւսիսոյ, Անգեղ տունն յարևմտից, և Աղձնիք ի հարաւոյ՝ Մեծին Հայոց սահմանագլուխներն էին առ Տրդատաւ և յաջորդօք նորա։ Սահմանագլուխք թագաւորութեանն Վաղարշակայ պարտէին լինել աւելի հեռուն. քանզի զՍիւնիս դնելով սահմանագլուխ յարևելից՝ Խորենացին դուրս կը թողու զԱտրպատական. նոյնպէս յարևմտից ոչ թէ Անգեղ տունն, այս ինքն Բարձր Հայք, լինելոց էր սահմանագլուխ, այլ Սեաւ ծով և Եգէականը, կամ գէթ Պոնտոս, Փռիւգիա և Կապադովկիա. իսկ ի հարաւոյ ոչ թէ Աղձնիք լինելոց էին սահմանագլուխ, այլ Ասորիք և Պաղեստին. քանզի ինչպէս արդէն տեսանք՝ Արշակ մեծ ըստ Խորենացւոյն տուած էր Վաղարշակայ «զմասն ինչ յարևմտեայ Ասորւոց և զՊաղեստին և զԱսիա և զամենայն Միջերկրայս, և զԹետալիա. ի ծովէն Պոնտոսի մինչև ի տեղին ուր Կաւկաս յարևմտեանն յանգի ծով, և զԱտրպատական» (տես էջ 229)։

Դիտողութեան արժանի է նաև, զի Սիւնիք, Աղուանք և Վիրք, Անգեղ տունն և Աղձնիք արդէն սահմանագլուխ նահանգներ էին, ուստի աւելորդ էր Վաղարշակայ կարգել զնոսա այն սահմաններուն վրայ «կողմնակալ», «հազարաւոր», «բիւրաւոր»։ Այս բառերը կ'առնու Խորենացին յԱգաթանգեղոսէ, իբրև վերադիր զինուո-

րական սահմանապահ իշխանութեանց։ Բայց Ագաթանգեղոսի հեգինակը այս վերադիրները կու տայ ոչ միայն չորս բդեշխութեանց որ էին տէրք սահմանագլուխ նահանգաց, այլ և ուրիշ երևելի նախարարաց։ Էջ 596 և 97, յետ յիշելոյ վեշտասան իշխան, զորս Տրդատ ղրկեց Կեսարիա տալ ձեռնադրել զԳրիգոր՝ կը յաւելու. «Այս իշխանք են ընտիրք, կուսակալք, կողմնակալք, հազարաւորք, բիւրաւորք ի մէջ Հայաստան աշխարհի տանն Թորգոմայ»։ Կողմնակալ, կուսակալ, ինչպէս նաև սահմանակալ բառերն առ Ագաթանգեղեայ և առ Բուզանդայ կը նշանակեն աշխարհատէր, գաւառատէր, և ամէն նախարարի կը պատշաճէին, քանզի ամէն նախարար էր նահանգի կամ գաւառի մը և կամ մասին իրիք գաւառի տէր։

**47.** Բդեշխք չէին զինուորական իշխանութիւններ, կարգեալ ի պահպանութիւն սահմանաց։ Այս հին բդեշխ, այսինքն տէր աշխարհի, անունն ի վաղուց տալ սովոր էին Հայք քանի մը սահմանագլուխ նահանգաց իշխաններուն, որ էին ընդ իշխանութեամբ Արշակունեաց, բայց ի բնէ Հայ չէին, այլ Սկիւթացի կամ Մասքութ, որդի բառով Դաւրանեան (Ագաթ. ԾԻԶ. տես և էջ 150), ինչպէս Աղուանք և Վիրք, կամ Ասորի՝ ինչպէս Աղձնիք, և կամ Ասորեստանցի և Մար, որպիսի էին հարաւային և հարաւային արևելեան սահմանք Հայոց։ Այսպէս կը գտնենք առ Ագաթանգեղոսի. «Առնոյր (Տրդատ) զչորեսին գահերէցս իւրոյ տաճարին որ բդեաշխքն կոչէին. զառաջին սահմանակալն Նորշիրական կողմանէն, երկրորդ սահմանակալն յԱսորեստանեայց (Կորդուաց, տես Խոր. Բ. ԾԳ.) կողմանէն, և երրորդն յԱրուաստական (Աղձնեաց, Միջագետաց, տես Բուզ. Դ. ԻԱ.) կողմանէն, չորրորդն ի Մասքթաց (Վրաց և Աղուանից) կողմանէն» (Ագաթ. ԾԻԶ.)։ Գուգարաց, Աղձնեաց և Նորշիրական բդեշխներ կը յիշէ նաև Բուզանդ։ Այս բդեշխութիւնք կային առ Արշակաւ թոռնորդւով Տրդատայ։ «Եւ սկսան, ասէ Բուզանդ, սորսորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին, թողին զիւրեանց արքայն Արշակ, նախ բդեաշխն Աղձնեաց, և Նորշիրական բդեաշխն . . . և յետ սորա Գուգարաց բդեաշխն» (Բուզ. Դ. Ծ.)։ Բուն զինուորական սահմանապահ իշխանութիւններ հաստատել, այսինքն զօրքը չորս բաժնելով դնել յարևելից, յարևմտից, ի հիւսիսոյ և ի հարաւոյ ընդ զօրավարութեամբ երևելի արանց՝ սկսաւ նախ առ Արտաշիսիւ, և Տրդատ նորոգեց այս սովորութիւնը (որ հաստատութիւն գտաւ առ նորին որդւով Խոսրովու։ «Բաժանէ Արտաշէս և զիշխանութիւն զօրուն ի չորս. զարևելեանն թողու ի վերայ Արտաւազդայ, և զարևմտեանն տայ Տիրանայ, զհարաւայինն

ի Սմբատ հաւատայ, և զհիւսիսայինն ի Զարեհ» (Խոր. Բ. ԾԳ.)։ «Սակայն Տրդատ (յետ մահուան սպարապետին իւրոյ Արտաւազդայ Մանդակունւոյ) չորս յիւրոցն տանելով զօրավարս, զՄիհրան առաջնորդ Վրաց, և զԲագարատ ասպետ, և զՄանաճիհր նահապետ ազգին Ռշտունեաց և զՎահան նահապետ Ամատունեաց» (Խոր. Բ. ԾԵ.)։ «Եկեալ Անտիոքոս (զօրավար Կոստանդեայ առ Խոսրով, որդւոյ Տրդատայ) զչորեսին սպարապետսն մատոյց ի նոյն իշխանութիւն զօրու, զորս կացուցեալ էր Տրդատ յիւրում կենդանութեանն՝ յետ մեռանելոյ դայեկին իւրում Արտաւազդայ Մանդակունւոյ, որ միագլխապետ էր և ամենայն Հայոց զօրավար։ Առաջին Բագարատ ասպետ՝ զօրավար արևմտեայ գնդին. երկրորդ՝ Միհրան բդեշխ Գուգարացւոց՝ սպարապետ հիւսիսային զօրուն. երրորդ՝ Վահան նահապետ Ամատունեաց՝ զօրավար արևելեան գնդին. չորրորդ՝ Մանաճիհր նահապետ Ռշտունեաց՝ սպարապետ հարաւային զօրուն» (Խոր. Գ. Զ.)։ Այս բաժանումը կար նաև առ Պապաւ, քանզի կը յիշուի քաջն Գնէլ Անձևացի սպարապետ արևելեան զօրուն Պապայ (Խոր. Գ. ԼԹ.)։

48. Վաղարշակ կը հաստատէ, ըստ Խորենացւոյն, ուրիշ բոլոր նախարարութիւնները, զՈրդունին «ի հովտին մեծի Բասենոյ», զԱպահունին, զՄանաւազեանն, զԲզնունեանն, սոքա ամենքին «ի զաւակացն Հայկայ», իւրաքանչիւր գաւառի բնակիչներէն ընտրելով անձինք կարգելով նահապետ, և ցեղերուն տալով գաւառաց անունները.—«Ի բնակչաց գաւառլ պերճագոյնս՝ տեարս կարգէ, յանուն շինից և գաւառաց կոչելովս։ Եթէ արդէն կային այն անուններով գաւառներ հանդերձ բնակչօք և արամբք երևելեօք՝ ապա կային այն նախարարութիւնք։

«Իսկ զՄոկացին, ասէ Խորենացին, ի նոյն գաւառէ գտեալ այր որ ունէր *սրիկայս* բազումս՝ նախարարութիւն հաստատէ»։ Մոկացիք, լեռնային վայրագ ժողովուրդ, կը համարուէին գիւղաբար շահատակող ի լերինս և յափափայս (տես, էջ 70), մինչև Տապհոյ, որդւոյ Ցազկերտի դև անուանել զՄոկացիս։ Յիշուելու արժանի դիպուած է այս, զոր իբր զարտուղութիւն կը մուծանէ Խորենացին Դպր. Գ. գլ. ԾԵ.։ «Էր երբեմն, ասէ, Տապհոյ և Առամայ Մոկացւոյ զհետ երամակաց ցռուց յանդգնագոյնս արշաւեալ ընդ խորաքարուտն և ի վիմուտ տեղիս. յորմէ կասել սկսաւ Տապուհ։ Իսկ Առամայ Մոկացւոյ ծաղրեալ զնա ասէ. Գնա, գնա, ատամնածորդիդ Պարսից, թէ այր իցես։ Եւ նա ասէ. Դու երթիջիր, զի ի քարինս՝ դիւաց է շահատակել։ Դարձեալ յայլում ժամու դիպեցաւ ի շամբս կինձս որսալ հրով. և Տապհոյ ոչ համարձակեալ

ի թռուն քաջարշաւ լինել, մինչև շրջապատէր հուրն. Եւ նորա զհայեցուածսն յերկուս բաժանեալ՝ այսր անդր բերեալ լինէր երկվարեան։ Միւսանգամ ասէ Ատոմ. Աստուածորդիդ Պարսից, ահա հայր քո և աստուած. ընդէր զանգիտես։ Իսկ Նապուհ ասէ. Թողեալ զկատակելդ՝ լանջանել ընդ հուրդ գործո զքեզ, որ և ես զինի քո. քանզի յառաջելն՝ ձիս իմ խրտչի։ Ցայնժամ այպանեաց զնա Ատոմ ասելով. Միթէ և այդ քարբինք իցեն, զի ես յառաջեցից. և արդ՝ եթէ դու զՄոկացիս կոչես գիւղացիս՝ ես զԱսպանեանսդ կոչեմ կնամարդիս։ Եւ մտրակեալ զերիվարն՝ իբրև ընդ հովիտս ծաղկանց անցանէր ընդ հուրն, զերծուցանելով զՆապուհ»։ Հաւանական, է թէ յընդհանուր բուսոյ բարուց այս լեռնաբնակ ցեղին, Մոկացւոց, թելադրեալ՝ կը յաւելու Խորենացին Մոկաց առաջին նահապետին պատմութեան մէջ այն պարագան, թէ «ունէր որիկայս բազումս», այս թէ ոչ՝ ոչ Վաղարշակ նախարար կը կարգէր աւազակապետ մը, և ոչ Մոկացիք կը պահէին այնպիսի աւանդութիւն մը, թէ նահապետ իւրեանց էր գլուխ որիկայից։

Վաղարշակ կը կարգէ նաև Կորդուաց, Անձևացեաց, Ակէացւոց, Ռշտունեաց, Գողթնեցւոց նախարարութիւնները, նաև «զմեծ նահապետութիւնն» Ծոփաց, թէպէտև Ծոփք (Չորրորդ Հայք) հանդերձ Անգեղ տամբ (Բարձր Հայք) ուրոյն թագաւորութիւն էին մինչև Տիգրան մեծ (Ստրաբ. Գիր. ԺԱ. 14)։

**49.** Վահունիք անգամ, ըստ Խորենացւոյն, իբրև սերունդ Վահագնի՝ ի Վաղարշակայ կարգեցան պաշտօնեայք մեհենից, և ի Վաղարշակայ կոչեցան Վահունի.—«Բայց յորդւոցն Վահագնի գտեալ արս, որք ինքնակամ խնդրեցին զմեհենիցն պաշտամունս՝ պատուէ մեծապէս, ի ձեռն տալով նոցա զքրմութիւնն, և կարգէ ընդ առաջին նախարարսն և անուն կոչէ Վահունիս»։ Զնշանակութենէ այսր անուան չասէ ինչ Խորենացին. յայտնի է սակայն Հայոց հին լեզուէն, թէ Վահունին կ'ելլէ *վահ* բառէն, որ կը պատասխանէ հնդեւրոպական լեզուներէն ոմանց *պոկ* կամ *բագ* բառին որ է աստուած կամ դիք։ Ուստի Վահունին թուի նշանակել աստուածեան կամ աստուծոց նուիրեալ ցեղ։

Խորենացին, ինչպէս տեսանք էջ 122՝ զՎահագն կը համարի որդի Տիգրանայ Հայկազնոյ, և ասէ թէ այս Վահագնի վրայ շինուած էր «Երկնէր երկինն», որ կ'երգուէր բամբռամբ ի ժամանակս իսկ Խորենացւոյն.—«զայս երգելով ոմանց բամբռամբ՝ լուաք իսկ ականջօք մերովք»։ Այս հաւանական է, քանզի ըստ Բուզանդայ, որպէս յիշեցաք վերը՝ Հայք «սիրէին վիպերգաց երգս առասպելաց զվիպասանութեանն, և նմին հաւատացեալք և ի նոյն հանապազոր-

դեալք»։ ԶՎահագնէ ասէին ևս միպասանք, թէ կռուէր ընդ վիշապաց և յաղթէր նոցա.—«Եւ ընդ վիշապաց ասէին յերգոն կռուել նմա և յաղթել»։ Զայս ակնարկէ և Ագաթանգեղեայ հեղինակն, «Վիշապաքաղ» կոչելով զՎահագն։ Բայց վիշապաւ ոչ թէ յաղթանդամ օձ կը հասկնային միպասանք, այլ այն առասպելեալ վիշապակերպ ոգիներն, որ ըստ հին սնապաշտ կարծեաց Հայոց՝ կը բնակէին յանբնակ տեղիս, ունէին տաճարս ուր կ'արգելուին զթագաւորազունս, այլովքն հանդերձ (Եզնիկ Ա. ԻԵ.)։ Նաև Հերակղի նահատակութեանց նմանը կը պատմէին զՎահագնէ.—«կարի իմն նմանագոյնս զՀերակլեայ նահատակութեանցն նմա երգէին»։ ԶՎահագն աստուածացուցեալ էին ոչ միայն Հայք, այլ և Վիրք, որ կանգնեալ զանդրի նորա պատուէին զոհիւք.—«այլ ասէին զսա և աստուածացուցեալ, և անդ յաշխարհին Վրաց զսորա չափ հասակի կանգնեալ պատուէին զոհիւք»։ Վահագն էր հաւանականապէս, ինչպէս կ'երևի Երկնէր երկնէն՝ այլաբանական օրինակ արեգական, ինչպէս Աստղիկ, միւս ևս աստուածութիւն Հայոց, «սենեակ Վահագնի կարդացեալ» ըստ Ագաթանգեղոսի՝ էր գէճ և վաւաշոտ պատկեր լուսնի, ընդ որում զոյգ կը պաշտուէր Վահագն իբրև սեղեխ նորա յԱշտիշատ Տարօնոյ։ Այսչափ տեղեկութիւն բաւական է ցուցանել, թէ չէր պատմական Վանձ ահագն, այլ հին աստուածութիւն Հայոց. ուստի և քուրմք նորա Վահունիք՝ շատ աւելի հին էին քան զոր կարծէ Խորենացին, թերևս այնչափ հին, որչափ էին երեքին աստուածք Հայոց, Վահագն, Աստղիկ և Անահիտ, որոց էին Վահունիք պաշտօնեայք։ Վահունիք ջնջուած կը թուին ի սկզբան դարձին Հայոց առ Տրդատաւ, որպէս պատմէ Ագաթանգեղոս.—«Եւ կոտորեցան մարդիկ պաշտաման քրմութեան որ ի տեղւոջ անդ էին (յԱշտիշատ)» (Ագաթ. ՃԺԵ.)։ Իսկ որդիք նոցա առնուեցան ի դպրոցս ժառանգաւորաց ըստ նորին Ագաթանգեղեայ.—«Տայր հրաման թագաւորն Տրդատ . . . զբազմութիւն մանկտւոյ ածել յարուեստ դպրութեան, և կարգել ի վերայ հաւատարիմ դպրապետս, առաւել զազգն պղծագործ քրմացն, զմանկունս նոցա ժողովել յարժանաւոր տեղիս դասս դասս» (Ագաթ. ՃԻ.)։

**50**. Այսորքիկ են ահա Հայաստանեայց նախարարութեանց «ուստըն և զիարդն» զոր կը խոստանար տալ մեզ Խորենացին յունական պատմութիւններէ։ Ի պատմութեան սուտ Խորենացւոյն զնախարարութեանց կան ընդհանուր տեղեկութիւններ, որ կրնան համարուիլ պատմական, և զորս դիւրին էր Խորենացւոյն առնուլ ոչ թէ այն անանուն յունական պատմութիւններէն, այլ իւրոյ ժամանակին ստոյգ կամ սխալ աւանդութիւններէն._զոր օրինակ, թէ

նախարարութեանց շատերն ի Հայկայ էին, (Հայկաւ պարտ է իմանալ զժամանակ հին Արարատեան թագաւորութեան), և թէ ցեղերէն ոմանք յօտար ղաղթականութեանց կը սերէին, ինչպէս Արծրունիք՝ յորդւոց Սենեքերիմայ, Բագրատունիք և Գնթունիք՝ յեկաց Պաղեստինացւոց։ Բայց չենք կրնար Խորենացւոյն երկրորդ գըրոց Է. և Ը. գլուխներն ամբողջ, կամ ինչպէս Խորենացին կ՚անուանէ, այն գրուածը «մեծ և հաւաստի պատմութեամբ լի» ընդունել իբրև ստուգիւ պատմական, հայեցեալ յանստուգութիւն անձին Վաղարշակայ, ընդ որում կապեալ է այն գլուխներուն պատմութիւնը, պատմութիւն մը՝ որ մեծաւ մասամբ հիմնուած է անուններուն յարմարութեան կամ բռնազբօսեալ ստուգաբանութեանց վրայ, քան ստոյգ պատմական աղբերաց։

Արդարև կ՚երևի, թէ անդէն իսկ առ Խորենացւով կային ի մէջ Հայոց յոյն և պարսիկ լեզուաւ ոչ սակաւ գրեանք։ Խորենացին յԳ. գլուխ առաջին գրոցն, յետ մեղադրելոյ զնախնիս մեր, մանաւանդ զթագաւորս, թէ անփոյթ եղեն աւանդել յետնոց զպատմութիւն իւրեանց ժամանակին և գործոց՝ ասէ. Թերևս ասիցէ ոք թէ ազգը գիր և դպրութիւն չունէր յայնժամ, և չկրցաւ ոգի առնուլ ստէպ պատերազմներէ։ Բայց այս չէ ճշմարիտ, քանզի եղան առանց պատերազմի ժամանակներ, և կար գիր Պարսից և Յունաց, որով այժմ կը գտնուին առ մեզ գիւղից և գաւառաց, նաև առանձին տանց, դատերու և դաշանց վերաբերեալ անթիւ գրեան, մանաւանդ ժողովրդեան ազատ կոչուած մասին մէջ.—«Այլ ասիցէ ոք արդեւք, վասն ոչ լինելոյ գիր և դպրութիւն ի ժամանակին, կամ վասն պէսպէս պատերազմացն, որ կուռ զմիմեանց զկնի անհետ է վերայ գային։ Այլ ոչ արդարև այսոքիկ կարծեցեալ լինի. քանզի գտանի և միջոցք լեալ պատերազմացն և գիր Պարսից և Յունաց, որովք այժմ գիւղից և գաւառաց, եւս և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց, և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն»։ Բայց այն «անբաւ զրուցաց մատեանք», զորս յիշէ Խորենացին՝ քաղաքային և առանին պիտոյից վերաբերեալ օրըստօրական գրուածներ էին, ոչ թէ ցեղերու ծագման և յաջորդութեան վերաբերեալ պատմական յիշատակք, ինչպէս յայտնի է նմին իսկ ի Խորենացւոյն, որ յետ ասելոյ սակաւիկ մի յառաջ, թէ «Ամենուն յայտնի է մեր թագաւորաց և նախնեաց տխմարութիւնն և անուսումնութիւն, քանզի թէպէտ փոքր ազգ եմք և տկար և ստէպ նուաճեալ ընդ այլովք՝ կը գտնուին սակայն և առ մեզ գործեալ ոչ սակաւ արութիւնք

արժանի գրոց յիշատակի. բայց ոչ ոք յառաջնոց պարտ համարե-ցաւ անձին աւանդել զայնոսիկ ի գիր»—կը յաւելու ի վերջ կոյս նորին գլխոյ. «Կը զարմանամ սակայն ընդ հանճար քո (իմա՛ Սա-հակայ Բագրատունւոյ), քանզի ի սկզբանէ մինչև ցայժմ առաջին եղար ձեռն արկանել զայսպիսի մեծ գործոյ, առաջարկելով մեզ գրել յօգուտ ազգին զպատմութիւն Թագաւորաց մերոց և Նախա-րարութեանց, թէ ուստի են նոքա և ինչ իւրաքանչիւր ոք գոր-ծեց, որ ցեղերն են բնիկ և ընտանի և ոյք օտար և եկամուտ, զամենայն պատմել կարգաւ ի ժամանակէ անտի աշտարակաշինու-թեան մինչև ցայժմ: Բայց կը հարցունեմ. *Մի՞թէ մատեա՞նք կան ինծ մոտ, կամ դպրութիւնք քոց հայրենեաց* (Հրէից), ըստ բանին Յոբայ, որպէս զի Հրէից պատմագիրներուն պէս, վերուստ է վայր առ քեզ իջեցունեմ, կամ ի քէն և յայլոց սկսելով հանեմ ի վեր. բայց զիարդ և իցէ՛ սկսիմ, թէպէտ մեծ ջանիւ, միայն թէ շնորհա-կալութեամբ ընդունուի աշխատութիւնս»: Ահա բուն բանք Խորե-նացւոյն. «Ամենեցուն մեզ յայտնի է Թագաւորացն մերոց և այլոց առաջնոց առ ի յիմաստն ազամարութիւն և անկատարութիւն ո-գւոյն բանականի: Զի թէպէտ և եմք ածու փոքր և թուով յոյժ ընդ-փոքու սահմանեալ և զօրութեամբ տկար և ընդ այլով յոլով անգամ նուաճեալ թագաւորութեամբ՝ սակայն բազում գործք արութեան գտանին գործեալ և ի մերում աշխարհիս, և արժանի գրոց յիշատա-կի, զորոց և ոչ մի ոք է նոցանէ պէտք անձին կալաւ մատենագրել: . . . Բայց ընդ քո յոյժ զարմացեալ եմ ընդ մտացդ ծննդականու-թիւն, որ յիսկզբանցն մերոց ազգաց մինչև ցայժմուս միայն գտար զայսպիսւոյ մեծ իրէ բուռն հարկանել, և մեզ խոյզ խնդրոյս առաջի արկանել՝ երկար և շահաւոր գործով զազգիս մերոյ կարգել զպատմութիւն, ճշդիւ զԹագաւորացն և զնախարարականաց ազ-գաց և տոհմից, թէ ո՛վ յումմէ, և զինչ իւրաքանչիւր ոք ի նոցա-նէ գործեաց, և ո՛վ ոք ի ցեղիցս որոշելոց ընտանի և մերազնեալ, և ո՛յք ոմանք եկք ընտանեցեալք և մերազնացեալք, և զգործս և զժամանակս իւրաքանչիւր գրով գրոշմել՝ ի ժամանակէ անկարգ ամբարտակին շինուածոյ մինչև ցայժմ: . . . Առ որ այսչափ միայն ասացից. Միթէ մատեա՛ն մերձ կայցէ ինձ, որպէս առ Յոբ, կամ դպրութիւնք քոց հայրենեաց, որովք նմանագոյն արդեւք Եբրա-եցւոցն պատմագրաց՝ ի վերուստ ի քեզ իջուցանեմ անսխալ, կամ ի քէն և յայլոց սկսեալ՝ անդր ի վեր հանիցեմ ի սկիզբն: Բայց սա-կայն սկսայց, թէպէտ և ջանիւ. միայն թէ և շնորհակալ ոք մերոցս գտանիցի լեալ աշխատութեանցս»:

Մեր ծերունի պատմիչը կը պահանջէ ի մէնջ յարգել զիւր աշ-

խատութիւն. բայց ինչ յարգ կրնայ և պարտի ընծայուիլ պատմագրի մը, որ թէև ծանր և մեծարոյ՝ առանց ունելոյ հին յիշատակարան կամ գիր, կը դնէ մեր առջև աղօտ հնութեան վերաբերեալ իրեր՝ զորս կը ջանայ հիմնել անուանց պիտակ ստուգաբանութեան կամ խաղերու վրայ միայն։

Թէպէտ չենք գիտեր Արծրունի, Գնունի, Սպանդունի, Հաւենունի, Ողկունի կոչմանց պատմական ծագումը՝ չենք կրնար ընդունիլ սակայն, թէ առաջին երկուքը կ՚ելլեն արծուի և գինի բառերէն, կամ թէ Սպանդունին է սպանդ բառէն, մինչ ունինք նոյն արմատով ուրիշ անուններ, ինչպէս Սպանդարան և Սպանդարատ, մին՝ գաւառի, և միւսն անձի անուն. ևս առելի անտեղի է Հաւենունին՝ բազէիւք թռչուն, և Ողկունին՝ սլաքաւ քօշ որսալէ հանել։ Անիրաւ կարծած չէ զՇարաշան կարծել նմանութիւն Սարասար անուան, որպէս և զԱռանն՝ Աղուան անուան. իսկ Գուշար՝ յայտնի իսկ Գուգարն է։ Անուան մը տառերուն փոփոխութեամբ կամ շրջմամբ նոր անուն կազմելու օրինակ առ Խորենացւոյն արդէն տեսանք, ինչպէս Գոմերն ու Թիրասը տառադարձութեամբ եղած Մերոգ, Սիրաթ (տես էջ 133)։

Վերջապէս, զոր օրինակ Վաղարշակայ պատմութեան առաջին, աշխարհակալութեան մասը՝ նոյնպէս այս երկրորդ, վարչական և օրէնսդրական յօրինուածութեան մասը՝ չունի լի և լի պատմական հաստատութիւն։ Անաչառ դատաստանաւ անհնար է մեզ նախարարութեանց հաստատութեան պատմութիւնն ի ձեռն Վաղարշակայ, իբրև առաջին Արշակունի թագաւորի, ընդունել այլազգ՝ բայց եթէ մեծաւ մասամբ իբրև հայրենասիրական հնարք, որով սրտառուչ մատենագիրն կամի յերեսս հարկանել նախարարաց զապերախտութիւն նոցա, որ ոչ սակաւ նպաստ եղան ի բարձումն թագաւորութեան Արշակունի ցեղէն, որում ըստ պատմութեան նորա, պարտական էին նոքա զիւրեանց գոյութիւն և իշխանութիւն։

**51.** Տարակուսելի է դարձեալ, թէ այնչափ պաշտօնեաներ ունէին Արշակունի թագաւորք։ Թագադիր ասպետութիւնն սեպհական էր Բագրատունի ցեղին, այնպէս որ յետ դադարելոյ անգամ թագաւորութեան արարողութեան, առ քրիստոնէութեամբ, Բագրատունիք պահեցին տիտղոսը։

Նոյնպէս մաղխազութիւնը, որ թուի նշանակել թիկնապահութիւն՝ յատուկ էր Խորխոռունեաց։

Երևելի պաշտօն էր նաև սպարապետութիւնն, բայց մասնաւոր ցեղի մը յատուկ չէր։ Սպարապետութիւնն ի սկզբան վարած կը թուին Բագրատունիք հանդերձ ասպետութեամբ (Խոր. Բ. Խէ,

ԾԳ.)։ Տրդատ սպարապետութիւնը տուաւ Արտաւազդայ Մանդակունւոյ, դայեկորդւոյ իւրում, որ փախուցած էր զնա, ըստ Խորենացւոյն, յետ մահու հօր նորա Խոսրովու ի դուռն կայսեր (Խոր. Բ. ՀԷ, ՁԲ.)։ Ագաթանգեղոս ասպետութեան և սպարապետութեան իշխաններն ուրոյն ուրոյն կը յիշէ։ Առ յաջորդօք Տրդատայ, գրեթէ մինչև ի բարձումն թագաւորութեան Արշակունեաց՝ Մամիկոնեանք վարեցին այս պաշտօնը։ Երևելի պաշտօն էր նաև Հազարապետութիւնը, որ նոյնպէս յատուկ չէր մասնաւոր ցեղի մը։ Հազարապետն թուի թէ էր վերակացու եկամտից, և հոգ կը տանէր մանաւանդ մշակութեան և բերոց երկրին։ Բուզանդ այս պաշտօնը կ'անուանէ «աշխարհատես խնամակալութիւն, աշխարհաշէն, աշխարհաատած ղեհկանութիւն» (Բուզ. Գ. Բ.), և զԳնունիս, որոց յանձն էր առ Արշակաւ թոռնորդւով Տրդատայ գործ հազարապետութեան՝ կ'անուանէ «շինականաշէն»—«շինականաշէն ազգն Գնունեաց, հազարապետն ամենայն երկրին»։ Տրդատ այս պաշտօնը տուած էր Օտայի Ամատունւոյ, ազատչին քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ (Խոր. Բ. ՁԲ.)։ Առ Տիրանաւ որդւով Խոսրովու հազարապետ էր Վաղարշ իշխան Անձտայ (Բուզ. Գ. ԺԲ.)։ Ի վերջ կոյս թագաւորութեանն Արշակունեաց զայս պաշտօն վարեց Վահան Ամատունի (Խոր. ԳԿԷ.)։

Կը յիշուին նաև տակառապետք և սենեկապետք Արշակունի թագաւորաց։ Մեծին Տիգրանայ տակառապետն էր Գնէլ Գնունի (Խոր. Բ. ԺԹ.), որ Երուսաղէմ գալով գերի բռնեց դաւով զՀիւրկանոս քահանայապետ Հրէից։ Իբրև սենեկապետ Տիրանայ, որդւոյ Խոսրովու Կոտակայ կը յիշուի Փիսակ Սիւնի, կատաղախօս, շնաբերան, շորիկ, շոգմոգ, տիրանենգ, տիրամատնիչ՝ ըստ Բուզանդայ (Գ. Ի.), վասն զի մատնեց զՏիրան ի ձեռս Պարսից, որ կուրացուցին զնա։

Յայտնի չէ, թէ ունէին Արշակունիք յատուկ հանդերձապետ (զգեցուցանող)։ Բուզանդ յիշելով տուն պատմուճակաց՝ կը յաւելու իբրև մեկնութիւն. «Ուր թագ արքունի դնէին», այսինքն տեղի թագադրութեան, կամ մանաւանդ տեղի պահելոյ զթագն արքունի։ Ապստամբ մարդպետն Դղակ սպանաւ հրամանաւ Պապայ ի տան պատմուճակաց.—«Այս Դղակ, ասէ Բուզանդ, էր այր մեծ և անձնեայ, քաջ հարուստ ոսկերօք. սակայն աապարակէր մարդկանն պատեցին զնովաւ, և բարձին զնա վերըմբարձ, և տանէին զնա մինչև ի դուրս տաճարին (սեղանատան) արքունի։ Իբրև ետես թագաւորն թէ անդր տանէին՝ ասէ. Մի՛ այսր, մի՛ այսր, այլ մուծէք զդա ի տուն պատմուճակացն։ Եւ զօրք սպարակրացն

մուծին զնա ի ներքս ի տուն պատմուճակացն կապեալ ձեռս յետս, այխինքն ուր թագ արքունի դնէին. և անդէն խօսել սկսաւ Դղակն և ասէ. Ասացէք ցարքայ, գոգէք. Ես այս մահու արժանի էի, բայց քեզ արժան էր զիս ի հրապարակի սպանանել, և ոչ ի տան թագաց, և զքո թագդ արեամբ շաղախել» (Բուզ. Ե. Զ.)։ Պատմուճակաց տունը թերևս էր նաև տուն հանդերձից. բայց յատուկ հանդերձապետ արքայի չիք ուրեք յիշեալ։

Մեծ պաշտօն էր մանաւանդ մարդպետութիւնն, ոչ միայն առ հեթանոս թագաւորօք, այլ և յետ քրիստոնէութեան։ Առ Տրդատաւ իսկ կը յիշուի «մարդպետութեան իշխան», որ և էր մին ի գլխաւոր իշխանաց, որ տարին զԳրիգոր ի Կեսարիա վասն ձեռնադրութեան (Ագաթ. ՃԾԲ)։ Սոյնպէս առ Արշակաւ, որդւով Տիրանայ, զՄեծն Ներսէս ձեռնադրութեան տանող իշխանաց գլխաւորն էր Հայր մարդպետն։ Ներսէս որ հեթանոսական սովորութեանց դէմ այնպէս սաստկութեամբ կը կռուէր՝ ոչ միայն հակառակ չէր այս սովորութեան, այլև կը պատուէր զմարդպետս։ Երբ անգամ մը Հայր մարդպետն յայցելութիւն եկած էր իւր երկիրներուն ի Տարօն, մօտ ի մայր եկեղեցին Աշտիշատու՝ մեծն Ներսէս որ կը գըտնուէր հոն՝ ի ճաշ հրաւիրեց ներքինապետը.—«Հրաման տայր, ասէ Բուզանդ, պատրաստել ճաշ եկեղեցն»։ Բայց ներքինին, ըստ Բուզանդայ, յայտնեց զչարակամութիւն իւր.—«Մինչդեռ պատրաստէին, ասէ, Նմա արժանի աւագօրէն սպաս՝ նա եղանէր յեպիսկոպոսական կայենէն յապարանիցն մինչև ի վկայարանս սրբոցն, ի մեծ և ի գեղեցիկ հրապարակին զերթևեկս առեալ շրջէր։ Տեսանէր զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղեացն, և զնայեացն ի խոնարհ, զի կարի վայելուչ էր, և չարակնեաց։ Ապա եմուտ բազմեցաւ յուտել և յըմպել. իսկ յորժամ արբեցաւ սխալակեցաւ՝ սկսաւ ներքինին խօսել բանս հպարտս և ամբարտաւանս յարբելեաց. դնէր թշնամանս Տրդատայ արքայի, ազգի և տակի և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հայոց։ Զիարդ, ասէ, զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է, և ոչ արանց։ Քանզի զսուրբ տեղեօքն քամակեալ արհամարհէր և ասէ. Զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի։ Եթէ ես Հայր մարդպետ կենդանի իցեմ և առ թագաւորաւն հասից՝ որ ինչ աստ իցէ, զայն ի բաց փոխեցից, և զտեղիս արքունի սենեակ կազմեցից» (Բուզ. Դ. ԺԴ.)։

Այս ամենայն պաշտամունք կը յիշուին ի մատենագիրս մեր, որ յառաջ քան զԽորենացին, բայց թէ կային նաև յատուկ ցեղե-

րէ պաշտօնեայք ի վերայ որսոյ, կուտից, սպասուց, և գահուց, զինարանաց, ամարանոցաց, մինչև քօշ և հաւ որսալու անգամ չենք գտներ ուրեք յիշեալ ի պատմութեան մերում ոչ յառաջ և ոչ յետոյ քան զԽորենացին։ Ընդհանրապէս պաշտօն ունեցող ցեղեր առ Ագաթանգեղոսի և Բուզանդայ կը յիշուին պաշտօններուն անուամբ—«իշխան թագակապ ասպետութեան», կամ «իշխան ասպետութեան տան», «իշխան սպարապետութեան տան», «իշխան մալխազութեան տան», «իշխան մարդպետութեան իշխանութեան», «իշխան հազարապետութեան»։

**52.** Ըստ Խորենացւոյն՝ Վաղարշակ նաև ուրիշ կարգեր կը հաստատէ, զոր օրինակ կ'որոշէ «ժամս ելևմտից և խորհրդոց և խրախճանութեանց և զբօսանաց» ի տան թագաւորին. կը կարգէ զինուորութեան աստիճաններ՝ «առաջինս և երկրորդս և երրորդս և որ ի կարգին». «յիշեցուցանողս երկուս *ի ծնոտ զրոց*», մին՝ բարւոյ, և միւսն՝ վրէժխնդրութեան. և «իրաւարարս ի տան արքունի, ի քաղաքս և յաւանս». կու տայ հրաման քաղաքացւոց՝ չքունանալ ի վերայ գեղջկաց—«մի կարի առ գեղջկօքն պերճանալ», այլ *եղբայրաբար վարուիլ*, և գեղջկաց՝ պատուել զքաղաքացիս *որպէս զիշխանս*. կը դնէ օրէնս՝ երէց որդւոց միայն իբրև ժառանգ. մնալ առ արքային, իսկ մնացեալ ուստերաց և դստերաց բնակել այլուր (ի գաւառս Հաշտենից)։ Զարմանք են, զի Խորենացին բաց ի կարգաց և հաստատութեանց, զորս յիշեցաք մինչև ցայժմ և որ պատմութեան մը վերացեալ և ընդհանուր մասը միայն կը կազմեն, և բաց յառաջին պատերազմէն, որ ընդ արևմտեայս (էջ 231)՝ ուրիշ քաղաքական դէպք չգտնելով ի յիշել յայնմ ընդարձակ տէրութեան և յերկար ժամանակի անդ քսան և երկուց ամաց, զորս կ'ընծայէ Վաղարշակայ՝ կու տայ նմա մեռանել խաղաղութեամբ ի Մծբին նախ քան զՔր. իբր 144-ին կամ 131-ին, ըստ իւրում ժամանակագրութեան։

Խորենացւոյն երկրորդ դպրութեան Ը. գլխոյն վերջը կ'աւարտէ Վաղարշակայ պատմութիւնը, և յաջորդ հինգ գլուխներն, այսինքն իններորդէն մինչև երեքտասաներորդը (Թ.—ԺԳ.) կը խօսին զգործոց Արշակայ և Արտաշիսի։ Պատմութիւն այս երկուց անուանեալ յաջորդաց Վաղարշակայ, ինչպէս տեսանք էջ 212—219, ոչ այլ ինչ է եթէ ոչ պատմութիւն արշաւանաց Կիւրոսի և յաջորդաց նորա Դարեհի և Քսերքսի, յարմարցուած ի վերայ Արշակայ և Արտաշիսի։ Ո՞վ չի տեսներ, թէ Արտաշիսի ի տապակ հանելն զԿրեսոս, դէպք մը, որ արդէն իբր երկու հարիւր յիսուն տարի առաջ եղած կը պատմուի, արտասուելն նոյն Արտաշիսի ի վերայ անցաւոր փառաց

աշխարհի ի տեսիլ բազմութեան զօրուն, ընկենուլն ի ծով Պոնտացւոց արձանը, փոխելն զծով ի ցամաք, այն է անցանելն կամրջով ընդ Հելլեսպոնտոս, հիացուցանելն զՀելլենացիս երթալով մինչև յԱտտիկէ, և վերջապէս կորակոր փախուստն ածապարանօք՝—միևնոյն դէպք են, զորս կը պատմեն ուրիշ պարագաներով զԿիւրոսէ և զՔսերքսէ Հերոդոտոս և Դիոդորոս Սիկեղացի։ Կրեսոսի բանուիլ և ի խարոյկ հանուիլն, և կարդալով զանուն Սոլոնի՝ ի գութ շարժելն զԿիւրոս և ազատիլն, ինչպէս նաև ի ծնէ համր որդւոյն յանկարծ խօսելն ի տեսանելն զհայր իւր ի վտանգի սպանման, և ուրիշ սոցին նման պարագաներ՝ վէպք են, որովք յունական հանճարը զարդարած է Կրեսոսի պատմութիւնը, և զորս Հերոդոտոս կը յիշէ իբրև զրոյց։ Ուստի ի զուր է Խորենացւոյն, զրոյցը պատմութիւն կարծելով, իբրև Արտաշիսի ձեռօք կատարուած, ջանալ հաստատել վկայութեամբ Պօղիկրատէս, Եւագարոս, Կամադրոս, Փղեգոնէոս անուն անձանց, իբրև երևելի պատմագրաց, մինչ ոչ միայն մատեանք սոցա անյայտ են, այլ և անուն և ժամանակն հազիւ նշմարելի ի պատմութեան։ Արդարև կը գտնենք հարևանցի իմն յիշուած Պօղիկրատ և Եւագորաս անուն աննշան հեղինակներ, իբրև հռետոր մանաւանդ քան պատմագիր, յորոց կան ճարտասանական հատակոտորք առ Սուիդասայ և այլոց։ (Տես Վիքդ. Լանկ. հաւաք. Հայ. պատմգր. Ա. 389, 390)։ Երրորդը, Կամադրոս՝ բոլորովին անծանօթ է։ Իսկ Փղեգոնիոս, եթէ կարդանք Փղեգոն՝ է Բ. դարու պատմագիր, յորմէ կան ճառք ինչ։ Բայց ով օք իցեն այն յոյն մատենագիրք զորս յիշէ Խորենացին՝ անտարակոյս գիտէին զՀերոդոտոս, և անհնար էր նոցա զ'ի վաղուց պատմեալն ի Հերոդոտեայ զԿիւրոսէ՝ առնուլ ի վերայ Արտաշիսի։ Դիտողութեան արժանի է մանաւանդ, զի վկայութիւնքն զորս բերէ Խորենացին ի հաստատութիւն ունելոյ Արտաշիսի զԿրեսոս, մանաւանդ երեքն, Պօղիկրատէսին, Եւագարոսին և Փղեգոնիոսին՝ գրեթէ միևնոյն իմաստը և ոճն ունին, մինչև յիրաւի է կարծել, թէ չորեքին ևս միևնոյն գրչէ ելած են, ըստ ձևոյն ամենևին նման ակադեմական ճառի մը, քան պարզ պատմական գրուածոյ։ Միևնոյն դէպքը, հակառակ Հերոդոտոսի, երեք կամ չորս պատմագրէ գրեթէ նոյն ձևով գրուած չենք կրնար հաւատալ։ Խորենացին թերևս այս ոճը կ'ակնարկէ յասելն, թէ «Բազումք են, որ ասեն զԿրիւսոս մերոյ Արտաշիսի կալեալ, և ոճով իմն պատմեն, ես հաւանիմ»։ Բայց այն ոճն է մանաւանդ, որ կու տայ կասկած նենգութեան։

Ըստ Խորենացւոյն՝ Արտաշէս կ'առնու նաև նախագահութիւնն ի Պարթևաց, շինէ իւր արքունիս ի Պարսս, և կը հարկանէ զրամ

իւրով պատկերաւ։ Արտաշիսի անուամբ դրամ գտնուած չէ տակաւին մինչև ցարդ։

**53.** Խորենացին յետ յիշելոյ ի վախճանի Թ. գլխոյ երկրորդ գրոցն զսպառել պատմութեան Մար Իբասայ—«Աստանօր սպառին բանք ծերունւոյն Մար Իբաս Կատինայ»՝ կը յաւելու. «Սկիզբն արասցուք պատմել քեզ ի հինգերորդ գրոցն Ափրիկանոսի ժամանակագրի, որում վկայէ Յովսեպոս և Հիւպողիտայ և այլք բազումք ի Յունաց։ Քանզի նա (Ափրիկանոս) բովանդակ փոխադրեաց (թերևս կամի ասել թարգմանեաց), որ ինչ ի քարտէսս (ի մատեանս) դիւանին (գրատան) Եդեսիայ յաղագս թագաւորացն մերոց պատմէր. որ մատեանքն (դիւանին Եդեսիոյ) ի Մծբնայ էին փոխեալ անդր»։ Ըստ Խորենացւոյն՝ Ափրիկանոս առած կամ թարգմանած էր նաև Պոնտոսի Սինոպ քաղաքին մեհենական պատմութիւններէն։ Թէ ինչպէս կրնայ վկայել Յովսեպոս Ափրիկանոսի, որ իբր երկերիւր ամօք յետոյ է քան զնա, կամ թէ ով են Հիւպողիտայն և այն բազումք ի Յունաց՝ չենք գիտեր։

Յուլիոս Սեքստոս Ափրիկանոս, յոյն մատենագիր Գ. դարուն, իբր 230-ին դառնալով ի հեթանոսութենէ ի քրիստոնէութիւն՝ գրեց յԱդամայ մինչև ցՀեղիոգաբաղոս, այսինքն մինչև 217, համառօտ ժամանակագրութիւն մը, որոյ հատակոտորք միայն կան առ Եւսեբեայ և առ այլս ոմանս ի հարց եկեղեցւոյ։ Թէ Ափրիկանոս առած էր ինչ ինչ յԵդեսիոյ դիւանէն, թերևս նաև ի մեհենական պատմութեանց Սինոպայ (եթէ կար այնպիսի պատմութիւն ի Սինոպ)՝ առ այս չունիմք ինչ ասել։ Բայց թէ ի քարտէսս, այսինքն ի մատեանս Եդեսիոյ դիւանին կը պատմուէին գործք առաջին թագաւորաց մերոց՝ այս սխալ ենթադրութիւն է Խորենացւոյն։ Արդարև Խորենացին սակաւ ինչ յետոյ ի վկայութենէ Եւսեբեայ կամի հաստատել, թէ ի դիւանին Եդեսիոյ կային գործք առաջին թագաւորաց մերոց մինչև ցԱբգար և զկնի Աբգարու մինչև ցԵրուանդ.—«Եկլեսիաստէ գիրք (Եկեղեցական պատմութիւն) Եւսեբի Կեսարացւոյ . . . յառաջին հագներգութեան (դպրութեան) յերեքտասաներորդ թուին վկայէ յԵդեսիայ դիւանին լինել ամենայն գործոց առաջին թագաւորացն մերոց մինչև ցԱբգար և զկնի Աբգարու մինչև ցԵրուանդ» (Խոր. Բ. Ժ.)։ Եւսեբիոս յիշելով զառաքումն Թադէոսի յԵդեսիա ի Թովմայէ՝ ասէ.—«Ի յիշատակարանս հասարակաց (Եդեսիոյ), յորս վաղեմի անցք պատմութեան քաղաքին եւ գործք քաջութեան Աբգարու դրոշմեալ կային՝ գտաք և զայսոսիկ (զպատմութիւն գալստեան Թադէի և որ ի կարգին) պահեալ մինչև ի մեր իսկ ժամանակս»։ Հին հայերէն թարգմանութիւնն ունի

այսպէս. «Ի քարտէսս որ կային անդ (յԵդեսիա), էր գրեալ ամենայն ինչ որ միանգամ գործեցաւ յառաջնոց անտի մինչեւ ցԱբգար»: Խորենացին այս թարգմանութեան նայելով կը կարծէ, թէ Եւսեբիոս բոլոր Հայ թագաւորաց գործերուն համար ասէ, թէ կը գտնուէին յԵդեսիա, մինչ բանք Եւսեբեայ են զվաղեմի պատմութեանէ քաղաքին Եդեսիոյ և զգործոց Աբգարու միայն: Այսպէս կը չըրի փաստ Խորենացւոյն, այն է Եւսեբեայ վկայութիւնը, թէ «յԵդեսիա դիւանին էին ամենայն գործք առաջին թագաւորացն մերոց մինչև ցԱբգար և զկնի Աբգարու մինչև ցԵրուանդ»: կը չըրի նաև այն, թէ Ափրիկանոս «բովանդակ փոխադրեաց (թարգմանեաց) որ ինչ ի քարտէսս դիւանին Եդեսիայ յաղագս թագաւորացն մերոց պատմէր»: Բայց թէև գտնուէր ի ժամանակագրութեան Ափրիկանոսի գործք առաջին թագաւորաց մերոց՝ Խորենացին չէր կրնար ունենալ զԱփրիկանոս, որոյ ժամանակագրութիւնն կորսուած էր յառաջ քան զհինգերորդ դար. քանզի զԱփրիկանոս կոչող վերջին ժամանակագիր է Եւսեբիոս. այնուհետև զԱփրիկանոս կոչող մատենագիրք յԵւսեբեայ առնելով կը կոչեն, ուստի և Խորենացին, ինչպէս զԱբիւդենոս և զայլ հին մատենագիրս Յունաց ( տես էջ 134)՝ նոյնպէս զԱփրիկանոս յԵւսեբեայ միայն գիտէր:

Խորենացին, որ զՄծբին կը համարի մայրաքաղաք առաջին թագաւորաց Հայոց Վաղարշակայ և յաջորդաց նորա՝ զմատեանս դիւանին Եդեսիոյ կը դնէ փոխեալ ի Մծբնայ յԵդեսիա:

Խորենացին կը յաւելու նաև զիւր վկայութիւն.—«Մի ոք, ասէ, անհաւատասցի, քանզի մեզէն իսկ ականատես եղաք այն դիւանին»: Յայտնի չէ սակայն, թէ դիւանին ականատես եղած էր Խորենացին, թէ դիւանին մատեաններուն՝ յորս գրուած էին ամենայն գործք առաջին թագաւորաց մերոց: Եթէ մատեաններուն ականատես եղաւ, ընդէր յետոյ ասէ. «Այժմ կարծեմ զտանի պահեալ ի նոյն քաղաքի», և փոխանակ առնլոյ զիւր պատմութիւն յԱփրիկանոսէ, ընդէր չառնուր ուղղակի Եդեսիոյ դիւանէն:

Վերջապէս բոլոր պարագայք պատմութեան Խորենացւոյն ըզծագմանէ Արշակունեաց և զգործոց ընծայելոց Վաղարշակայ և երկուց յաջորդաց նորա՝ ունին այնպիսի նշաններ, որ համարձակութիւն կու տան մեզ ասել, թէ մեր ծերունի պատմիչն, արդարև բազմարդիւն և նշանաւոր ի մատենագիրս մեր՝ կը ճարտարէ մանաւանդ քան կը պատմէ զնախնական ժամանակ պատմութեանը մերոյ:



# ԳԼՈՒԽ Ը.

## ԿՐՕՆՔ ԵՒ ԼԵԶՈՒ ՆԱԽՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ՀԱՅՈՑ

*1. Դաւանաբանութիւն առ նախնի Հայս: Անահիտ, Վահագն եւ Աստղիկ: 2. Անահիտ, քուն ազգային դիք: 3. Անահտայ պաշտօնն ի Հայս: 4. Այս պաշտաման նմանութիւնն ընդ պաշտաման Ափրոդիտեայ: 5. Դիցապաշտութեան յունական ձեւն առ Արշակունեօք: 6. Բագ, Վան, Դիք—հին կրօնական բառեր: 7. Զանդիկ կրօնք առ Հայս: 8. Զանդիկ կրօնք ի Հայս առ Մարօք: 9. Հմայութիւն, ապացոյց ոգիներու հաւատոյ. Հայական սօսիք, Արմաւիր: 10. Այլ ատենաց հմայութեան ի Հայս հեթանոսութեան ժամանակէն: 11. Ոգիներու երեւոյթք ըստ նախնի Հայոց. Յուշկապարիկ, Պայ, Առլէզ, եւայլն: 12. Արտաւազդայ առասպելը: 13. Կրօնք արեւելեան եւ արեւմտեան Հայոց: 14. Պէսպէս կարծիք զծագմանէ Հայերէնի. Ռիղղէր: 15. Հայերէնն հնդեւրոպական լեզուաց ցեղէն է: 16. Ապացոյց ի բառից եւ ի քերականական ձեւոց: 17. Հայերէնն իբրեւ ուրոյն արմենական ճիւղ յիւր վերջին կատարելութիւն հասած առ Թարգմանչօք:*

1. Զհին կամ զնախնական կրօնից Հայոց չունիմք ինչ վկայութիւն ի պատմութենէ։ Եթէ պարտ իցէ հաւատալ ընթերցուածոյ բեւեռագրաց՝ Հայք շատ հին ժամանակ ունէին կուռս։ Սարեւաքինի արձանագրութեանց մէջ Օբէրդ կը կարդայ Հալտի և Պանկապարդու անուն կուռք, զորս Սարեւաքին գերի առաւ Ուրարդուայ (Արարատայ) Ուրսա թագաւորէն (տես էջ 44)։ Եթէ Օբէրդի ընթերցուածը շիտակ է՝ Հալտի շատ նմանութիւն ունի *Բաղդ* բառին։ Բայց թողունք բեւեռագիրները. Անահիտ, Վահագն և Աստղիկ, զորս նախնի մատենագիրք մեր նոյն կը համարին ընդ Արտեմեայ, Հերակլի և Ափրոդիտեայ (բաղդատէ Ագաթ. ԾԺԳ. ընդ ԺԴ. գլխոյ Բ. դպր. Խոր.), ինչպէս անուններէն յայտնի է՝ բնիկ հայ աստուածներ էին, որոց պաշտօնը շատ հին էր ի մէջ Հայոց, մանաւանդ յարևմտեան կամ ի ստորին գաւառս—ի Գարանաղի, յԵկեղեաց, ի Դերջան և ի Տարօն, յառաջագոյն իսկ քան զԱրշակունիս (տես Խոր. Բ. — ԺԴ.)։

2. Ի մէջ այս երից կը թուի առաջին և գլխաւոր լինել Անահիտ, որում մեծ տօնաղօսը կը տօնէր։ Տրդատ ի մէջ այլ յորջորջա-

նաց կոչ տայ Անահտայ տիկին, այսինքն Թագուհի տիկնանց, և կ'անուանէ զնա փառք ազգին և կեցուցիչ.—«Եթէ ոչ առնուցուք, ասէ ցԳրիգոր, «յանձն դիցն պաշտօն մատուցանել, մանաւանդ այժմ մեծի Անահտայ տիկնոջ, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ» (Ագաթ. Ե.). և այլուր.—«Ոչնչամանես զմեծն Անահիտ, որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց» (Անդ. Զ.)։ Մարթ է ասել՝ թէ Անահիտ էր բուն ազգային աստուած և պաշտպան Հայոց։ «Ամենայն աստուածք Պարսից, ասէ Սարաֆեան, կը պատուէին ի Մարաց և ի Հայոց, բայց ի Հայոց կը պատուէր մանաւանդ Անահիտն։ Ուստի Տրդատ ի տալն այլ և այլ յատկութիւնս դիցն՝ Անահտայ կ'ընծայէ խնամակալութիւն, այսինքն առաջնութիւն կամ պաշտպանութիւն.—«Լիութիւն պարարտութեան յարոյն Արամազդայ, խնամակալութիւն յԱնահիտ տիկնոջէ, և քաջութիւն հասցէ ձեզ ի քաջն Վահագնէ ամենայն Հայոց աշխարհիս» (Ագաթ. ԺԲ.)։

Յ. Անահիտ երեք մեհեան կամ պատկեր ունէր ի Հայս. մին յԵրիզա ի գաւառին Եկեղեաց։ Հոս Տրդատ ստիպեց առաջին անգամ զԳրիգոր «պսակս և թաւ ոստս ծառոց» տանել նուէր Անահտական պատկերին։ Այս Անահիտ է, զոր Արտաշէս Բ. ըստ Խորենացւոյն խնդրեց բժշկութիւն ի վերջին հիւանդութեան իւրում։ Բայց այս կուռքը ոչ միայն Հայոց թագաւորք, այլ և հռոմայեցի կայսերք կը պատուէին մեծամեծ ընծաներով.—«Զոր թագաւորք ամենայն պատուեն, ասէ Տրդատ, մանաւանդ թագաւորն Յունաց» (Ագաթ. Ե.)։ Սարաֆեան յանուանէ կը յիշէ Հայոց այս մեհեանը.—«Հայք, ասէ, այլևայլ տեղեր կանգնած են մեհեան Անահտայ, մանաւանդ յԵկեղեաց։ Յոյն և հռոմայեցի մատենագիրք Երիզայի Անահիտը կ'անուանեն Տաւրեան Անահիտ։ Կը պատմուի, թէ հին ատենն ի Տաւրիդ, յայժմուն Խրիմ, կար Անահտայ մեհեան, ուր քրմուհի էր Իփիգենիա դուստր Ագամեմնոնի, որ ընդ եղբօր իւրում Ոռեստեայ փախչելով ի Տաւրիդէ՝ բերաւ ընդ իւր Անահտայ պատկերն, որ յերկնից անկեալ կը կարծուէր։ Երկրորդ պատկեր Անահտայ էր յԱրմաւիր։ Բայց այս երկոքին պատկերք ևս բերուեցան ի Յունաց ի Հայս առ Արշակունեօք (Խոր. Բ. ԺԲ, ԺԴ.), ոսկի և կռեալ նորագոյն համարուէր և զարդ, քանզի էին Յունաց Արտեմիսն, որպէս անուանէ Խորենացին. Ագաթանգեղոս հեթանոսին հայացնելով կ'անուանէ Անահիտ։ Բուն Հայոց Անահիտն էր յԱշտիշատ Տարօնոյ, համակ ոսկի, ուստի և առ Ագաթանգեղեայ կը կոչուի Ոսկեմայր, Ոսկեծին, Ոսկեհատ։ Ղուկուղոս հռոմայեցի զօրավարն, երբ կէս դար յառաջ քան զՔրիստոս, անցաւ այս Անահտայ նուիրեալ արջառներ, որ ուննելով [illegible]

նշանը՝ կ՚արածուէին աստ անդ, և ոչ ոք կ՚իշխէր մերձենալ ի նոսա։ Ըստ Պլինիոսի՝ հռոմայեցի զօրավարն Անտոնիոս, սակաւ ինչ յետոյ քան զՂուկուղղոս, Անահտայ այս ոսկի պատկերն տարաւ Հայաստանէն։ Թերևս յետոյ ուրիշ մը գրուեցաւ ի տեղի առաջնոյն, քանզի չորրորդ դարուն սկիզբը, Հայոց դարձին ժամանակ, կար յԱշտիշատ Անահտական ոսկի պատկեր, զոր Լուսաւորիչ կործանեց (Ագաթ. ՇԺԳ.)։

4. Անահտայ պաշտօնն ի Հայս կը թուի թէ էր նման Աֆրոդիտեայն Յունաց։ Ստրաբոն, յետ ասելոյ թէ Հայք կը նուիրէին այր և կին գերիներ (hiérodule) Անահտայ՝ կը յաւելու. «Մինչև ցայս վայր չիք տեղի զարմանալոյ. բայց դիցապաշտութիւն Հայոց երթայ անդր ևս, զի սովորութիւն է առ նոսա արանց աւագաց ձօնել դիցն զդստերս իւրեանց կուսանս. այլ այս չէ ինչ արգել սոցա, յետ տալոյ զանձինս ի պոռնկութիւն ի մեհեանսն Անահտայ՝ գտանել դիւրաւ արս որ ոչ խղճիցեն առնուլ զնոսա ի կնութիւն։ Հերոդոտոս գրեթէ զնոյն օրինակ պատմէ զաղջկանց Լիւդացւոց։ Բայց դստերք Հայոց այնպէս իմն առատաձեռն են առ արս սիրենն զնոսա՝ մինչև տալ նոցա ոչ ասպնջականութիւն միայն, այլ և պարգևս աւելի քան զոր ի նոցանէն առնուցուն. և այսու յայտ իմն առնել կամին, թէ են յընչեղագոյն տանց՝ որ ոչ թողուն զնոսա կարօտանալ իւիք։ Սակայն ոչ եթէ ում և պատահիցէ շնորհեն նոքա զասպնջականութիւնն, այլ որչափ մարթ է՝ ընդունին զարս, որ հաւասարապատւիցեն նոցա» (Ստրաբ. ԺԱ. 15.)։

5. Բայց դիցապաշտութիւնն ըստ յունական ձևոյ ծաղկեցաւ մանաւանդ առ Արշակունեօք, երբ մեծին Տիգրանայ և Միհրդատայ արշաւանաց ժամանակ ի Փոքրն Ասիա և ի Յոյնս՝ տարան ի Հայս երևելիք աստուածոց Յունաց—Դիոս, Աթենաս, Արտեմիս, Հեփեստոս, Ապողոն, Հերակլէս, և զետեղեցան յերևելի քաղաքս և ի գիւղս, ինչպէս յԱրմաւիր, յԱնի, ի Թիլ, յԵրիզա, յԱշտիշատ, ի Բագայառիճ (Խոր. Բ. ԺԲ, ԺԴ.), յորս գտաւ զնոսա Լուսաւորիչն ի սկզբան դարձին Հայոց (Ագաթ. ՇԸ—ՇԺ, ՇԺԴ—ՇԺԶ.)։ Ջերմագոյնք ի դիցապաշտութեան ի թագաւորս Հայոց, որպէս Երուանդ, Արտաշէս, Վաղարշ, մի զմիով ելին յընդունել այս աստուածներն ի քաղաքս իւրեանց և կամ ի շինել և ի նուիրել նոցա քաղաքս և բագինս (Խոր. Բ. Խ, ԽԹ, ԿԶ.)։

6. Առ Արշակունեօք առին Հայք նաև բագ բառը, զոր Ագաթանգեղեայ հեղինակն պարթևարէն կը համարի, և որ ունէր հին հայերէն դիք բառին նշանակութիւնը։ Այս բագ բառէն կազմուած են, ինչպէս յայտնի է՝ բագին, բագարան, բագաւան. վերջինն հայերէն բառով կը կոչուի նաև Դիցաւան.—«Գայր հասանէր (Գը-

րեգոր) ի քաղաքագիւղն Բագաւան, որ անուանեալ կոչի ի պարթեւական լեզուէն Դիցաւան» (Ագաթ. ճԺՁ.). և այլուր Բագայառիճ անուան համար սէ նոյն Ագաթանգեղոս. «Գայր հասանէր ի Միհրական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ, ի գիւղն զոր Բագայառիճն կոչեն ըստ պարթեւարէն լեզուին» (Ագ. ճԺ.)։ Ըստ մեզ՝ այս բագ բառին հայեցի ձևն է *վահ*, որ կը տեսնուի յանուանս ինչ, որպէս Վահագն, Վահէվահեան, Վահունի, Վահան, և ի յատուկ անուանս ինչ, որպէս Վահրամ, Վահրիճ։ Վահագն, ինչպէս յայտնի է՝ Հայոց Հերակղէսը կամ Արամազդն էր։ Վահէվահեան կը կոչուէր Հայոց հին աստուածներուն—Վահագնի, Աստղկան և Անահտայ նուիրեալ հին երևելի մեհեանն յԱշտիշատ։ Վահունիք էին քուրմ, և կը թուին այսպէս կոչուած իբրև նուիրական ցեղ։ Իսկ վահան կոչուած է ասպարն, հաւանականապէս վասրն զի յառաջ ժամանակաւ ասպարներուն վրայ կը գտնուէր ընդհանրապէս աստուծոյ կամ դից ուրուք պատկերը։ Այս վահ բառն է վեհ ածականը, զոր յետ անկման լեզուին կը գտնենք գործածուած առ Խորենացւոյն, իբր աստուածային կամ գերագոյն.—«Վեհ ինձ Արտաշէս քան զՄակեդոնացին Աղեքսանդր» (Խոր. Բ. ԺԳ.)։ «Ամենեցուն քան զքեզ նախագունիցն ճանաչիս վեհագոյն» (Անդ. Ա. Ա.)։

Ինչպէս վահ արևելեան (Արիական) լեզուաց բագ բառին՝ նոյնպէս հաւանական կ'երևի թէ *դիք* լծորդ է արևմտեան (յոյն և լատին) լեզուաց *թէոս* և *տէուս* բառերուն։ Մեր հին մատենագրութեան մէջ, որ քրիստոնէական ժամանակին կը վերաբերի՝ դիք անունը կը տրուի հեթանոս աստուածոց միայն, և թէպէտ ունի անեզական ձև, որ կը ցուցնէ թէ բառը ծնունդ է բազմաստուածութեան ժամանակի, ինչպէս Ծննդոց *էլոհիմը*՝ կը գործածուի նաև իբրև եզակի.—«Կործանեցին զբագինսն եւս *դիցն* Արամազդայ, հօրն անուանեալ դիցն ամենայնի» (Ագ. ճԹ.)։ Ասի նոյնպէս «Անահտական դիք», այսինքն Անահիտ կոչուած աստուածուհին, «Տիւր դիք», իբր Ապողոն կամ Հերմէս, «Վանատուր դիք», այն է Արամազդ։ Աստուած բառը, որոյ ծագումն և ստուգաբանութիւն անյայտ է՝ է սակայն բառ հայերէն, և մեր քրիստոնէական մատենագրութեան մէջ կը տրուի ճշմարիտ Աստուծոյ, թէպէտ, մանաւանդ յոգնակին, կը տրուի նաև հեթանոս աստուածոց կամ դից։ Քրիստոնեայ մատենագիրք մեր սովոր են երբեմն չ մասնկան յաւելուածով տալ չաստուած կամ չաստուածք՝ դիք նշանակութեամբ։

7. Ձենք գիտեր սակայն, թէ դիցապաշտութիւն կամ կռապաշտութիւնն ի Հայս, ոչ միայն յունականն, այլև ազգայինն, այն է պաշտօն Վահագնի, Աստղկան և Անահտայ, էին բուն ազգայի՞ն թէ

եկամուտ։ Կը թուի մանաւանդ, թէ հին Հայք ունէին զանդիկ կամ զրադաշտական կրօնից գլխաւոր վարդապետութիւնը։ Զանդիկ կամ զրադաշտական, այսինքն Արիական ցեղին նախնի կրօնից գլխաւոր վարդապետութիւնն էր՝ երկու սկզբը դնել, մին՝ բարւոյ, և միւսն՝ չարի։ Բարի և չար ոգիներ դնել, և չարերն առանձին անուամբ *այս* կոչել՝ ըստ Եզնկայ էր ի վաղուց հետէ մին ի գլխաւոր կրօնանական վարդապետութեանց Հայոց.—«Ասէ Հրեշտակ ոգի. . . . , ասի և դև ոգի, այլ ոգի չար. . . զոր ի մեր լեզու *այս* չար ասեմք, որպէս ի խորանաց հարցն մերոց առաջնոց ըստ սովորութեան ի մեզ կարգելոյ» (Եզնիկ Ա. ԻԳ.)։ Աներևոյթ վիշապաց հաւատալ էր նոյնպէս, ըստ Եզնկայ (Ա. ԻԷ.), մին ի սնապաշտութեանց նախնի Հայոց, և կ'ակնարկէ հաւանականապէս Արհմնի կամ Խորամանոյ, այսինքն չար սկզբան վարդապետութիւնը։ Նաև *քաջք* կը նշանակէ առ մեզ ոգիներ, բայց բարի կամ ազնիւ ոգիներ, իբր ռամկօրէն «մենէ աղէկները», և այս ի վաղուց, քանզի ի հին վիպասանս Հայոց կը գտնենք այսպէս գործածուած.—«Զմանէ», այսինքն զԱրտաւազդայ (որդւոյ Արտաշիսի), ասէ Խորենացին, «երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս, եթէ ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց. դժուարի, ասեն, Արտաւազդ՝ ասելով ցհայրն. Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս որպէս թագաւորեմ։ Վասն որոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս, եթէ Դու յորս հեծցես յազատ ի վեր ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս. անդ կացցես, և զլոյս մի տեսցես» (Խոր. Բ. ԿԱ.)։ Քաջ բառը նաև հասարակ լեզուի մէջ սովոր ենք գործածել փոխանակ բարւոյ կամ ազնուի։ «Քաջ արանց» ասել սովորութիւն է առ մեզ Թագաւորաց, իբրև լաւագոյն և պատուականագոյն մարդկան կամ դիւցազանց։ Նոյնպէս ասի «քաջ գիտել» իբրև բարւոք գիտել։ Նաև քաջութիւն բառը շատ անգամ կառնուի առ մեզ փոխանակ լաւութեան կամ առաքինութեան։

8. Բայց զանդիկ կամ զրադաշտական կրօնից բուն վարդապետութիւնն առին Հայք Մարաց և Պարսից ժամանակ, ինչպէս յայտնի է սա կրօնական բառերէն—*Արամազդ, Հրեշտակ, դեւ, դժոխք*, որ արիական լեզուէն տառադարձութեամբ առնուած են։ Թէ Հայք Պարսից ժամանակ զանդիկ կրօնքն ունէին՝ յայտնի է նաև Պերսեպոլիսի սեպագիր արձանագրութիւններէն, որ են Դարեհի Վշտասպեայ և Քսերքսի, և ուր Հայք զանդիկ կրօնք ունեցող ազգաց կարգը կը յիշուին։ Անծանօթ չէր Հայոց վիպասաններուն նաև ոչ միայն Պարսից գիրքը Զենտաւեստ, այլև Վետան—Հնդկացը, որոյ վէպե-

րէն ամանց պատմական ձև տրուած է ի պատմութեան Խորենացւոյն, որպիսի են Արայի և Տիգրանայ պատերազմներուն պատմութիւններն, որպէս յիշեցաք վերագոյն (էջ 51 և 164)։

Գ. Թէ ոգիներու հաւատալ շատ հին էր առ Հայս՝ այժմ երեւելի ապացոյց է հմայութիւնն, զորոյ յիշատակութիւնը կը գտնենք ի հնագոյն աւանդութեան Արմենական սօսեաց, և որոյ նուիրական տեղին Թուի լեալ Արմաւիր։ Խորենացին կու տայ մեզ այս աւանդութիւնն ի խօսելն զԱնուշաւանայ, թէ Սօս կը կոչուէր, վասն զի ձօնեալ էր ի սօսիսն Արմաւրի, և կը յաւելու, թէ այս սօսեաց տերեւներուն աջ և ահեակ շարժումներէն ըստ շնչելոյ հողմոյն՝ հին Հայք սովոր էին առնել հմայութիւն, այսինքն գուշակութիւն.—«Արայեանն Արայ մեռանի ընդ Նամիրամայ ի պատերազմի, թողլով արու զաւակ ամենահարուստ և շատահանճար յիր և ի բան, զԱնուշաւանն, որ Սօս անուանէր, քանզի ձօնեալ էր ըստ պաշտամանց ի սօսիսն Արամանեկայ, որ յԱրմաւիր, զորոց զսաղարթուցն սօսաւիւն, ըստ հանդարտ և կամ սաստիկ շնչելոյ օդոյն ևեթ ուստ շարժումն՝ սովորեցան ի հմայս աշխարհիս Հայկազանց, և այս բազում ժամանակս» (Խոր. Ա. Ի.)։

Հոգի կամ ոգի բառն շատ լեզուներու մէջ նոյն է ընդ հողմոյ։ «Ոգւոյ և հողմոյ անունն եբրայեցերէն և յունարէն և ասորերէն նոյն է. նա թէ և հայերէն ոք մանր միտ դնիցէ՝ նոյնպէս գտանի. յորժամ տագնապեալ ոք յումեքէ իցէ՝ ասէ. Զեռ ոգի կլանել, չեռ ոգի առնուլ. և այնու զօդոյս, զոր միշտ ծծեմք՝ յայտ առնէ» (Եզն. Ա. ԻԳ.)։ Օդոյ շարժումն ոգիներու ազդեցութեան ընծայելու օրինակներ ունինք ի պատմութեան ոչ միայն հեթանոս, այլ և աստուածապաշտ համարեալ ազգաց։ Եհովա մեղմ օդով կը յայտնուի Եղիայի, և ի գործս առաքելոց Հոգւոյն սրբոյ գալուստն կը պատմուի լեալ սաստիկ հողմոյ շարժմամբ։ Ուստի բնական էր, ինչպէս Պեղասգացւոց Դոդոնայի կաղնւոյն (տես էջ 180)՝ նոյնպէս հին Հայոց Արմաւրի սօսիներուն տերեւոց շարժումն ընծայել ոգիներու, իբրև տեսակ մը օդոյ, և առնել գուշակութիւններ։ Հաւանականապէս աստի ծագած է հայերէն *սօսափիւն* բառը, որ կը նշանակէ տերեւներու շշիւն։

Արմաւրի սօսիներուն նուիրուիլ յայտնի է թէ կրօնական արարողութիւն էր հին Հայոց մէջ, բայց թէ ինչ էր նուիրումն՝ այն չէ յայտ։ Արմաւրի սօսիներուն տեսակը կը թուի լինել յատուկ Հայաստանի, և թերևս յայն սակս էր նուիրական։ Խորենացին կ'անուանէ այն սօսիներն Արամանեկայ, որով կ'իմանայ թերևս զԱրմենակ որդի Հայկայ, ըստ Մար Իբասայ։ Բայց ինչպէս Արմաւիր՝

*նոյնպէս Հարկաւ սօսիներն յետոյ էին քան զԱրմենակ ըստ վկայութեան նորին իսկ Խորենացւոյ, քանզի զորդի Արմենակայ զԱրմայիս դնէ Խորենացին շինիչ Արմաւրի (Խոր. Ա. ԺԲ.)։ Թէ ուստի կ'առնու Խորենացին սօսիներուն պատմութիւնը՝ չենք գիտեր. յայտնի է սակայն, թէ արմենիաքա, արմենիական կամ Հայկական, սխալմամբ կը կարդայ Արամանեկայ։ (Տես և էջ 180)։*

**10.** *Արմաւրի պատգամատեղին վրայ ուրեմն կը թուի խափանեալ, քանզի յետ այսր յիշատակութեան Խորենացւոյն ոչ ևս ուրեք կը գտնենք յիշուած ո՛չ սօսիները և ոչ զՀմայս։ Բայց Հմայութեան այս տեսակը միայն չէր, զոր կը գործածէին Հայք։ Ցովհան Մանդակունի, կամ այլ ոք ի Հայ վարդապետաց ժամանակակից նըմա կամ մօտ ժամանակաւ, որպէս յայտնի է ոճէն, ի ճառին «Վասըն Հմայից գիւթականաց» յետ գանգատելոյ, թէ «մեծ մասն աշխարհիս ընդ յուռթիւք և ընդ հմայիւք ենուտ . . . , թողին զԱստուած արարիչ, և առ դիւթս և առ յուռութս և առ թովիչս և առ պահարանս ընթանան»՝—կը յիշէ հմայութեան այլևայլ տեսակներ, և ասէ թէ սպասաւորք եկեղեցւոյ և աբեղայք անգամ կը գրէին կախարդանաց գիրեր, զորս պահարան կ'անուանէ։ Հմայութեան սովորական տեսակներ էին, ըստ վերոյիշեալ ճառին, թովչութիւն, հատահարցութիւն, հաւահմայութիւն, մաղաքախութիւն, քուէհարցութիւն, դիւահարցութիւն, որոց նշանակութիւնք բաւական յայտնի են անուններէն։ Ցուցնելու եղանակը նկարագրելով ասէ. «Զարադիւթն ի մէջ գետին անցեալ յուռթէ, 'յօրանչէ, ի ձախ դիւթէ և ի յաջ թքթքէ . . . կոչէ զդեւն յօդ, յերկաթ, ի ջուր, ի նարօտս, յիւղս, ի գարի, յուլունս, ի մոմ և ի հեր գլխոյ»։*

*Դիւթութիւնն ընդհանրապէս արուեստ կը համարուէր, և կային ի պաշտօնէ դիւթք. բայց շատերը նաև անձամբ կ'ուսանէին յուռթել.—«Դիւթս ի տունս ածեն առ ի յուռթել. և ոչ միայն արտաքին դիւթիւքն վարին, այլ և անձամբ ևս յուռութս ուսանին և գրեն պահարանս»։*

*Դիւթք կը համարուէին նաև գիտակ ապագայից. ուստի ասէ ճառն. «Զառաջիկայ ինչ գիտութիւն դիւթք ոչ երբէք գիտեն։ Այլ ասեմ. Զոր դիւթքն ասեն՝ այնպէս լինի։ Եթէ երբէք պատահէ՝ մի խաբիր, ոչ եթէ ի դիւթէն եղև, այլ եթէ չերթայիր առ դիւթն՝ քեզ ի ժամուն այն այնպէս պատահէր։ . . . Եւ բազում անգամ չլինի . . . բայց մարդիկ ի չպատահելն չհային, այլ եթէ զմին պատահեալ տեսանիցեն՝ զայն առեալ վերացուցանեն, և ի լսելիս ամենեցունց արկանեն»։*

*Դիւթք կը կարծուէին նաև բուժիչ ցաւոց։ «Եթէ ասիցես,*

ասէ ճառն, բժիշկ է (դիւթն)՝ գործ բժշկի այս է, խարել, կտրել և արիւն թափել և դարմանս ըստ ցաւոցն մատուցանել, ոչ թէ յուռութս յուռթել և սատանայական բարբանջս բարբանջել, կամ աղ և ածուխ կամ ասղանի առնուլ կարմիր, և ուլունս յուռթել, և կամ գիր պահարան ընդ անձն արկանել, և կամ զոսկերս ձկանց և սողնոց և զծրարս բժժանաց ի ձեռին և յական և ի պարանոցի կապել։ Այլուր ասէ. «Ցորժամ մխ ի մարմնի խզեսցի, կամ ցաւ ինչ արագ անկանի՝ դիւթս ի տունս ածեն առ ի յուռթել և գրել պահարանս, և ի փոյս ցաւածիցն արկանեն։

Ուրիշ տեսակ սնապաշտութիւն էր, ըստ վերոյիշեալ ճառին, օրահմայն և լուսնախտիրը, այսինքն ձախող կամ վնասակար համարել այս ինչ կամ այն ինչ օր, զորօրինակ շաբաթը կամ չորեքշաբաթին կամ զաւուրս լուսնոյ.—«Ընդէ՞ր, ասէ, յօրահմայս և ի խտիրս անկանիս։ Ի՞ւ վնասակար է շաբաթն կամ չորեքշաբաթին, զի ի նոցանէ համարիս ինչ եղծանել խոտոյ, որթոյ և նիւթոց կալոյ, հնձանի և սերմանց . . . ընդէ՞ր ունիս զլուսինդ պատճառ եղծանելոյ, զի խարես գործել յաւուրս նորա։

Ի ճառին յիշուած է նաև բախտի և ճակատագրի կամ հրամանաց հաւատալու սնապաշտութիւնը։ Թէպէտ քրիստոնէական ժամանակի պատմութիւն է այս՝ յայտնի է սակայն, թէ հեթանոսութեան մնացորդ էին այս սնապաշտութիւնք, որոց սկիզբն անծանօթ էր։

**11.** Հին Հայք ոչ միայն կը հաւատային ոգիներու և նոցա բարի և չար ազդեցութեան, այլ և կը կարծէին թէ ոգիք կ՚երևէին մարդկան, մարդոյ կամ գազանաց և ճիւաղաց կերպարանօք. Հայերէն լեզուն այսպիսի առասպելեալ անուններ շատ ունի, ինչպէս յուշկապարիկ կամ պարիկ, պայ, ծովացուլ, առլէզ, նհանգ, շահապետ վայրաց։ Եզնիկ յիշելով Հայոց այս սնոտապաշտ հաւատքը՝ կը ջանայ հերքել.—«Զծովացուլ ի կովէ ելեալ ասեն, և զպայն իմն ի մարդկանէ, և զառլեզն ի շանէ։ . . . Ի մարմնաւորէ աներևոյթ ինչ ոչ ելանէ, որպէս ոչ յաներևութէ իմեքէ մարմնաւոր. ոչ երբէք ի մարդկանէ ելեալ (է) պայն՝ եթէ առ երես արարած իցէ, և ոչ ի կովուց ծովացուլն ելեալ՝ եթէ ի ծովակս բնակիցէ, և ոչ ի շանէ ինչ ելեալ, եթէ ընդ աներևոյթ զօրութիւնս ինչ կեցցէ, և յորժամ վիրաւոր ոք անկեալ ի պատերազմի դնիցի՝ թէ լիզիցէ և ողջացուցանիցէ, զոր արալեզն կոչեն։ . . . Այլ և վիճեալ եւ ընդդէմ ի բանիցն վերայ. ին ասէ, թէ ի մերում գիւղ ծովացուլ ընդ կով գործեաց, և զգոչիւնն հանապազ մեք լսեմք ամենեքեան։ Եւ միւսն ասէ. Զպայն իսկ իմ աչօք տեսեալ է։ Միթէ և զարալեզն ես ոք կարիցէ ասել, թէ և զայն ուրուք տեսեալ իցէ. և թէ յա-

առջին ժամանակն արալեզք լիզէին զվիրաւորս և ողջացուցանէին, արդ ընդէր ոչ լիզիցեն և ողջացուցանիցեն. ոչ նոյն պատերազմունք են և նոյնպէս վիրաւորք անկանին: Այլ յայնժամ ասեն գիւցազունք էին» (Եզն. Ա. ԻԴ): Բայց այս Հաւատքը կար նաև յետ քրիստոնէութեան, թէ արալեզք լիզելով կ'ողջացունէին պատերազմի մէջ անկեալները: Զօրապետէն Մուշեղէ, զոր Վարազդատ յաջորդ Պապայ սպաննել տուաւ դաւով՝ Բուզանդ կը պատմէ այսպէս. «Իբրև տարան զմարմին սպարապետին Մուշեղի ի տուն իւր՝ ոչ Հաւատային ընտանիք նորա մահուն նորա, թէպէտ և տեսանէին զգլուխ նորուն զատ ի մարմնոյն անտի: Զի ասէին. Դորա յանթիւ ճակատ մտեալ էր, և վէր երբէք չէր առեալ. ոչ նետ մի դիպեցաւ երբէք, և ոչ այլոց զինու խոցեալ է զդա: Իսկ կէսք յառնելոյ ակն ունէին նմա. մինչև զգլուխն անդէն ի կոճեղն կարեալ կցեցին, և Հանին եդին ի տանիսն աշտարակի միոյ, ասէին, թէ վասըն զի այր քաջ էր՝ արալեզք իջանեն և յարուցանեն զդա: Պահապան կային և ակն ունէին յառնել, մինչև նեխեցաւ մարմինն: Ապա իջուցին յաշտարակէ անտի և լացին թաղեցին զնա որպէս օրէն էր»:

Նհանգաց և վիշապաց և շահապետաց վրայ Հետևեալ կերպով կը խօսի Եզնիկ. «Եւ ոչ այլ ինչ արարած գոյ որ կարիցէ ի կերպարանս կերպարանս լինել, որպէս զվիշապացն և զնհանգացն Համբաւեն: . . . Վիշապք, ասեն, և նհանգք կերպս ի կերպս լինին: Զվիշապաց մանաւանդ, ինչպէս կ'երևի ի բանից Եզնկայ՝ այլևայլ սնապաշտ կարծիս ունէին Հայք, զոր օրինակ թէ արտերէն ցորենը կը կրէին, թէ որսի կ'ելլէին և թէ ունէին տաճարներ, ուր կը պաՀէին զթագաւորազունս.—«Եւ ոչ վիշապք զտոհմականս արդեանց կրեն, և ոչ զրաստ գոյ նոցա եթէ զարդիւնս ի կալոց ուրեք կրիցեն, և ի զուր է Կա՛լ կա՛լն ասել ուժեք ի կալս և ոչ Ա՛ռ առ:... Եւ ոչ ՚որս երբէք որպէս մարդկան արարեալ են վիշապք կամ առնիցեն, և ոչ տաճարք իբրև մարդկան են նոցա ի բնակութիւն, և ոչ զօք ի թագաւորազնեայ և ի գիւցազանց ունին կապեալ առ իւրեանս կենդանի, . . . որպէս մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ կայ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, և նա ելանելոց է և ունելոց զաշխարհս: Եզնիկ դիւաց կեղծիք կը Համարի այս երևոյթները, որպէս թէ դևք կ'երևէին մարդոց այնպիսի կերպարանօք, որպէս զի զմարդիկ մոլորեցնելով ձգեն ի կռապաշտութիւն.—«Սատանայ, ասէ, մեծացուցանէ յաչս մարդկան զվիշապս, զի յորժամ ահագինք երևեցին ոմանց՝ առնուցուն զնոսա ի պաշտօն: Կարծեցուցանէ, թէ և նհանգք ինչ իցեն գետոց և շահապետք վայրաց. և յետ կարծե-

ցուցանելայ՝ ինքն կերպարանի կամ ի վիշապի կերպարանս, կամ ի նհանգի իմն և ի չաշհապետոյ։ Զի եթէ էր ինչ նհանգն անձնաւոր՝ ոչ երբեմն ի կնոջ կերպարանս երևէր, և երբեմն փոկ լինէր և լուզորդաց ընդ ոտս անկեալ հեղձուցանէր, այլ կամ կինն կին կայր կամ փոկն փոկ» (Եզն. Ա. ԻԵ.)։

**12.** Խորենացին կը հաստատէ Եզնկայ խօսքը զԱրտաւազդայ, յիշելով իւրոյ ժամանակին պառաւական զրոյցը, թէ յայրի ուրեք կապուած է Արտաւազդ երկաթի շղթաներով, զորս երկու շունք կը կրծեն, որպէս զի ելլէ Արտաւազդ և վախճան տայ աշխարհի. բայց դարբնաց կռաններու ձայնէն կը զօրանան շղթաները, ուստի և դարբիններէն շատերն, ասէ Խորենացին, հետևելով առասպելին՝ կիրակի օրեր երեք կամ չորս անգամ կը բախեն սալը, որպէս զի զօրանան շղթայք Արտաւազդայ.—«Զրուցեն զմանէ և պառաւունք, եթէ արգելեալ կայ (Արտաւազդ) յայրի միում կապեալ երկաթի շղթայիւք, և երկու շունք հանապազ կրծեն զշղթայսն. ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանահարութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն։ Վասնորոյ և առ մերով իսկ ժամանակաւ բազումք ի դարբնաց զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ» (Խոր. Բ. ԿԱ.)։

**13.** Զանգիկ կրօնք և կռապաշտութիւն շատ հակառակ են իրարու, և որովհետև երկացունց ևս հետքը կը գտնենք ի վաղուց առ Հայս ըստ մեզ կը թուի թէ առաջինն էր բուն և նախագոյն կրօնք արևելեան Հայոց, մինչ կռապաշտութիւնն յարգի էր մանաւանդ յարևմտեան մասին, ի սարերն կոչուած գաւառս։ Այս կարծեաց համաձայն կու գայ սա դէպքը, որ դիցապաշտութեամբ անուանի տեղիք, ինչպէս Աշտիշատն և Երիզայ, յարևմտեան մասին էին. յարևելեան գաւառս երևելի պաշտօնատեղի մը ամենևին յիշուած չէ։

**14.** Կամելով խօսել համառօտիւ զՀայ լեզուէն՝ աւելորդ կը համարինք յիշել ոմանց ըսածը ժամանակաւ, թէ հայերէնն այն առաւօտեան լեզուն է, զոր խօսեցան նախ անուանել նախածնողք մեր յերկնային դրախտին, և ապա սերունդք նոցա մինչև ի խառնակութիւն լեզուաց, և որ յետոյ Նոյայ միջոցաւ անցաւ ի նախնին մեր Հայկ։ Այսպիսի կարծիս պաշտպանել թերևս ներելի էր դար մի յառաջ, մինչդեռ լեզուաբանական ուսումը դեռ չկար։ Ցորմէ հետէ ծնաւ լեզուաբանութիւնն, և ծանօթ լեզուք բաժանուեցան դաս դաս իբրև ուրոյն ընտանիք՝ գիտունք ջանացին որոշել զտեղի հայերէնին ի կարգս լեզուաց։ «Հայք, ասէ Րիզգէր, գիտնագոյնք անգամ ի նոսա, որպէս Ինճիճեան, Չամչեան և Աւգեր, հնա-

ցեալ հմտութեամբ, mit veralteter Gelehrsamkeit, կը ջանան ցուցընել, բայց ի զուր, թէ հայերէնը մարդկային ազգին նախկին լեզուն է։ Հնագոյնք յեւրոպացի քննչաց, յանուանէ Շրէօտէր և Ատելունկ, առ տգիտութեան չկրցան ծանօթ լեզուաց մէջ տեղ մը տալ հայերէնին, ուստի Պալլի կովկասեան ինքնագլուխ լեզու մը համարեցաւ հայերէնը։ Աւելի հնագոյնք, Ագոլութ և Դրոմլէր ազգակից համարեցան հայերէնը խպտերէնի, մինչ ինքեանք այս երկուց լեզուաց ևս անգէտ էին։ Վաղ ուրեմն Ստեփանոս Բիւզանդացի փռիւգերէնի նման կը համարէր այս լեզուն, հաւանականապէս, ասէ Բէդէրման, վասն զի Արարատ ի գիրս Սիբիլլայից սխալմամբ դրուած է ի Փռիւգիա։ Բայց որովհետև փռիւգերէնն այնպէս անծանօթ է ինչպէս նմին համացեղ կարծուած հին Թրակերէնն, ընդ որում այլք ազգակից համարեցան հայերէնը՝ հայ լեզուին փռիւգերէնի հետ նմանութիւնն այնչափ անստոյգ է, որչափ կարծիք Սարաքոնի, որ զՀայս և զԱրիս իսկ ոչ միայն բարուք, սովորութեամբ, մարմնոյ կազմութեամբ, այլ և լեզուաւ կը համարի նմանս ընդ Սեմականաց, Արաբացւոց և Ասորւոց, սա պատճառաւ միայն՝ զի գտանէր զնոսա խառն բնակեալս ի Միջագետս։ Պալլաս հայեցեալ յարդի հայերէնն միայն՝ դրաւ Հայոց լեզուն ի կարգս Դուրանեան լեզուաց, իբրև միջին իմն ի մէջ Թաթար կամ Թուրք բարբառոց և կովկասեան լեզուաց։ Լաքրոզ զհայերէնն համարելով նոյն ընդ հին լեզուին Մարաց՝ աւելի մօտեցաւ ճշմարտին, մանաւանդ զի ըստ Նայմանի մեծագոյն մասն բառից Մարաց, որ գտանին առ Հերոդոտեայ՝ կը մեկնուին հայերէնով։ Զարմանք չէ այսչափ հակառակ կարծիս տեսանել, զհայերէնէն, որ հարևանցի միայն ճանչցուած էր, մանաւանդ այնպիսի ժամանակ, մինչ Գլաբրոդ անգամ ձայներու արտաքին նմանութենէ միայն կը դատէր լեզուաց ազգականութիւնը, զոր գեթ՝ լեզուին բովանդակ քերականական կազմութենէն միայն հնար է։ Բէդէրման եղև առաջին, որ եցոյց հաւաստեաւ զազգականութիւն հայերէնին ընդ հնդեւրոպական լեզուաց։ Հմուտ լեզուաբանն Բոպ կ՚ընդունի զայս, և Նայման կը համարի իբրև արդէն ապացուցեալ» (Րիդ. Արևմտ. Աս. Մասն Գ. 578)։ Բայց ինչպէս ճանչցան գիտունք թէ հայերէնն տոհմակից է լեզուաց հնդեւրոպական ցեղին։ Սեմական լեզու մը ճանչնալ, որպէս ասէ Րընան՝ դիւրին է քան հնդեւրոպական մը. բայց և այնպէս հնդեւրոպական լեզուք ևս ունին որոշ նշաններ, որ չեն կրնար վրիպել գիտնական մտադիր դիտողութենէ։ Հայերէնի ցեղակցութիւնն ուրիշ հնդեւրոպական լեզուաց, հնագունից և հեռաւո-

բաղաւնից հետ անգամ, որպիսի են սանսքրիտն, յոյնն և լատին, այնպէս յայտնի և ներքին է, զի նմանութիւնն որ կայ ի մէջ սոցա և հայերէնին՝ չկարէ լինել արդիւնք ոչ պատահման և ոչ փոխառութեան։

**15.** Հայերէնի այս նմանութիւնը կը տեսնուի հնդեւրոպական լեզուաց երկու գլխաւոր տարրներէն, այսինքն բառերէն և քերականական ձևերէն միանգամայն։ Թողունք բառերու, մանաւանդ թուականաց նմանութիւնը, որ յայտնի և որոշ է աւելի քան որչափ հարկաւոր էր՝ ի ճանաչել հայերէնի ազգակցութիւնն ընդ հնդեւրոպական լեզուաց. քերականական ձևերու նմանութիւնը բոլորովին կը լուծէ խնդիրը։ Այսպէս *մ*, *ս*, *ն*, *ղ*, որ իբրև դիմորոշք մեծ դեր կը խաղան ի հայերէն դերանուանս և ի ձևս բայից՝ նոյն պաշտօններն ունին ի գլխաւորս հնդեւրոպական լեզուաց, որպիսի են սանսքրիտն, զենդն, յոյնն և լատինն։ Հայերէն սեռական և տրական նշաններն *ի* և *մ* (*իմ*, *միում*, *որում*, *այդմ*) կը գտնենք ի լատիներէնի. երեքին լծորդ *ւ*, *վ*, *բ*, իբրև նշանք հայերէն գործիականի՝ կը յիշեցունեն նոյնպէս լատիներէնի b(us)-ը. *ի* որ ընդհանուր նշան է մեր երկուց անցելոց, անկատարին և կատարելոյն, և *ց*՝ մեր ապառնույն՝ կը գտնուին, մին ի լատիներէնի (lego, legi), և միւսն՝ ի sy-ն սանսքրիտի (տա-*սիամի*, տա-*ցեմ* կամ տա-*ց*)։

Հնդեւրոպական լեզուաց յատուկ նշաններէն մին ըստ լեզուաբանից, այն է կատարելոյն նախորդ յաւելուածն anguement, *ա* կամ *է*, ինչպէս սանսքրիտերէն՝ *ա*-տամ, *ա*-տաս, *ա*-տադ և յունարէն *է*-դրափօն, *է*-դրափսէ՝ կը գտնենք նոյնպէս ի հայերէնի. այսպէս, *է*-առ, *ե*-բաց, *ե*-թող. ունինք օրինակ յոմանս ի զարտուղի բայից, որպիսի են *գամ*, *դնեմ*, *տամ*, որոց խոնարհման ձևն թուի լինել համեմատութեամբ աւելի հին, և որ ունին ի կատարեալն նաև յապառնին յիշեալ նախորդ յաւելուածը *ե*.—*եկի*, *եկից*. *եդի*, *եդից*. *ետու*, այլովքն հանդերձ։ Իբրև յատուկ քերականական ձև հայերէնի կրնանք յիշել յոգնականացուցիչ *ք* գիրն, յոր կը փոխէ հայերէնն իւր համացեղ լեզուաց մեծ մասին *ս*-ն։

Քերականական ձևերու նմանութիւնն, զոր ունի հայերէնն ընդ հնդեւրոպական լեզուաց՝ աւելի մանր կրնայ ցուցուիլ համեմատական քերականութեան մը մէջ, քան յայսմ համառօտ ծանօթութեան, որոյ նպատակ է միայն երկբայութիւնը բառնալ՝ թէ մեր լեզուն, իւր բնութեան նայելով, չկարէ վերաբերիլ լեզուաց ուրիշ խմբի մը, բայց միայն հնդեւրոպականին։

**17.** Թէպէտ այսպէս բնութեամբ հնդեւրոպական՝ է սակայն հայերէնն այնպէս ուրոյն և անկախ, իբրև զսանսքրիտն, զյոյնն և

գայլը ի Համացեղից իւրոց, մինչև յիրաւի է կոչել զնա յատուկ անուամբ իբրև արձանական ճիւղ ի մէջ Հնդեւրոպական ցեղին։ Չունենալով Հնագոյն դարերէ գրաւոր մնացորդներ՝ ենք և պէտք մընանք ի Հարկէ անգէտ, թէ ինչ փոփոխութիւններէ անցաւ և ինչ ազդեցութիւններ կրեց Հայերէնն յընթացս, չէ յայտ, որչափ դարուց, մինչև Հասաւ յայն աստիճան, յորում կը գտնենք զնա յանգին մնացորդս առաջին Հայ մատենագրութեան անուանեալ ոսկեդէն դարուն, որ է առաջին կէս Հինգերորդ դարուն, իսկ և իսկ յետ գիւտի Հայերէն դպրութեան։ Նայելով սակայն գիտնական անաչառութեամբ մատենագրական յատկութեան վերոյիշեալ մնացորդաց լեզուին՝ անհնար է չսքանչանալ։ Հարստութիւն, մաքրութիւն և ընտրութիւն, բանաստեղծական զարդ, ճաշակ և փիլիսոփայութիւն, որ կը տեսնուին այն չքնաղ մնացորդաց լեզուին մէջ՝ կ'ենթադրեն ազգային քաղաքական և մտաւոր բարձր վիճակ մը, որչափ կրնայ մտածուիլ յայնպիսում Հնութեան ժամանակի։

Հինգերորդ դարուն առաջին կիսուն Հայերէն մատենագրական լեզուն, զոր բառին անձկագոյն նշանակութեամբ, թարգմանիչք մեր ոչ թէ Հնարեցին, այլ ուսան, և որոյ օրինակն ունիմք յեւս Հնագոյն Հատակոտորս ինչ երգոց վիպասանաց մերոց, որ գէթ իբր երեք դար յառաջ էին քան զթարգմանիչս մեր, թէև Հայու միայն զգալի է այս՝ է սակայն եթէ ոչ Հրաշք՝ գէթ Հրաշակերտ, և միմիայն նշան զոր թողած է Հայ ազգն իւր վաղեմի մեծութեան։ Անհնար էր լեզուին Հասանել յայն չափ կատարելութեան՝ առանց մատենագրական մեծ շարժման։ Մատենագրական նշանաւոր շարժում մը գնել Հայոց մէջ յառաջ քան զգիւտ գրոյն, թէպէտ մատենագրական շարժումն լեզուի մը յանգիր ժամանակին չէ անօրինակ ըստ Մաքս Միւլլերի, եթէ դժուարին է՝ ևս առաւել դժուարին է գնել, թէ Հայերէն լեզուն, առանց ամենևին այնպիսի շարժման, Հասաւ յայն աստիճան՝ մինչև կարողացնել զթարգմանիչս մեր թողուլ մեզ այն Հրաշալի մատենագրութիւնը։ Իցի՛ւ, բախտը, որ յետ կորուսանելոյ մեր այն լեզուն առաւ մեզ այն մատենագրութենէն առաջին մնացորդներ՝ տայր մեզ յարգել ըստ արժանւոյն այն լեզուն, որոյ ազդեցութեամբ միայն Հնար է որ և իցէ բարւոքումն յարգի լեզուի մերում։

## ՎԵՐՋ ԱՌԱՋԻՆ ՄԱՍԻՆ։

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## *Առաջին մասին:*





Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 85

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ քաղաքիրական տեղեկութեանց

## ՄԱՍՆ Բ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՀԵԹԱՆՈՍՈՒԹԵԱՆ։

ԹԻՖԼԻՍ

Տպարան Մ. Դ. Ռօտինեանցի

Типографія М. Д. Ротиніанца, Гол. пр., д. № 41.

1895

Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 85

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

*ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ քանասիրական տեղեկութեանց*



## ՄԱՍՆ Բ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ



## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՀԵԹԱՆՈՍՈՒԹԵԱՆ։



ԹԻՖԼԻՍ
Տպարան Մ. Դ. Ռօտինեանցի
Типографія М. Д. Ротниіанца, Гол. пр., д. № 41.
1895

# ՄԱՍՆ Բ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### ԳԼՈՒԽ Ա.

### ԵՐԿՐՈՐԴ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ. ԱՐՇԱԿՈՒՆԻՔ։

*ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ։*

*1. Արտաքսիաս, կամ կանգնումն հին Արարատեան թագաւորութեան։ 2. Փոփոխութիւնք տիրող ցեղից։ 3. Օրինակ իշխանութեան—բացարձակ միապետական։ 4. Եկամուտք։ 5. Դատաստանական վարչութիւն. Ընկերական կարգք. Օրէնք. Պատիժ։ 6. Ազդեցութիւն քրիստոնէութեան։ 7. Պաշտօնէութիւն. Գործակալք։ 8. Չարդք։ 9. Կառք։ 10. Զինուորութիւն։ 11. Պատերազմ։ 12. Փող հարկանել։ 13. Դրօշ։ 14. Խառնուրդ։ 15. Ճակատ յարդարել։ 16. Հաղորդակցութեան հնարք. Ճանապարհք։ 17. Ամրութիւնք։ 18. Սահմանագլուխ իշխանութիւնք։ 19. Զօրք։ 20. Զօրանիստ տեղիք. Հնարք Մուշեղի, զրպարտութիւն զնմանէ եւ սպանումն։ 21. Քակտումն զօրութեանն Արշակունեաց։*

**1.** Արշակունի, այլով անուամբ՝ ոստանիկ, այն է արքունական ցեղն Հայոց՝ էր հաւանականապէս սերունդ հին Արարատեան թագաւորութեան, որ յետ կորուսանելոյ զանէրութիւնն իբրև 300 ամաց, այն է ի Դարեհէ Վշտասպեայ (500 նախ քան զՔր.) մինչև յԱնտիոքոս մեծ, առաւ միւս անգամ զիւր անկախութիւն (189 ն. ք. զՔր.) Արտաշխիւ, կամ, յոյն յորջորջմամբ, Արտաքսիասաւ, նոյն իսկ յԱրարատեան երկրին, կամ ի Հովտին Երասխայ (Ստր. ԺԱ. 14. 2, 3), ուստի և յետոյ կը կոչուի ի Բուզանդայ երկրորդ «Արարատեան տէրութիւն» (Բուզ. Գ. Ժ.)։ Այսպէս, ըստ մեզ, աւելի ճիշդ և պատմական է կոչել զնա ընդհատեալ յաջորդութիւն հին Արարատեան թագաւորութեան, քան դուստր պարթևականին, որպէս երևեցուցանէ Խորենացին։

**2.** Արշակունեաց թագաւորութիւնն, թէպէտ սկսաւ հին արարատեան ցեղիւ, սակայն չտեւեց նոյն ցեղին մէջ որդի ի հօրէ մինչեւ նոյն անուան վերջին թագաւորն Արտաշէս, որպէս կուտայ կարծել նոյն Խորենացին, ըստ օրինակի Յուդայի թագաւորութեան, որ տեւեց ի նմին տան ի Դաւթայ մինչեւ ի վերջին շառաւիղ նորա Սեդեկիա։

Արշակունեաց թագաւորութիւնն, որ տեւեց իբր 550 տարի (189-է Ն. Ք. գՔր.—428 յետ Քսի), ունի երեք ժամանակ կամ դար՝ ընդարձակ մտօք. յառաջնումն ցեղն Արտաքսիասայ կը տիրէ միահեծան ի սկզբանէ (189 Ն. Ք. գՔր.) մինչեւ գրեթէ ի սկիզբն քրիստոնէական թուականին. յերկրորդումն, ի սկզբանէ քրիստոնէական թուականին մինչեւ 105, կը տիրեն խառն թագաւորք հայացեալք այլեւայլ թագաւորական տուներէ մերթ Պարսից եւ մերթ Հռոմայեցւոց կողմանէ, մանաւանդ այս վերջնոց, որոց եւ հարկատու է թագաւորութիւնն. յերրորդումն կը տիրէ Պահլաւ ցեղն, յԱրտաշիսէ Բ. ըստ Խորենացւոյն (Տիրիթ կամ Տրդատ ըստ Տակիտոսի) մինչեւ ի բարձումն թագաւորութեանն (428) ի ձեռն երկուց սահմանակից մեծ տէրութեանց, Հռոմայեցւոյն եւ Սասանականին, որոց խաղալիկ եղած էր թագաւորութիւնն գրեթէ իւր ծննդենէն հետէ։ Զառաջին զերկուս ժամանակսն մարթ է կոչել հեթանոսութեան ժամանակ, զվերջինն՝ քրիստոնէութեան ժամանակ, յորում Հայ ազգն, իբրեւ տէրութիւն, է արդարեւ աւելի տկար, բայց աւելի իրագէտ (conscient) եւ բարոյապէս աւելի անկախ, եւ որով կ'սկսի ազգային պատմագրութիւն, ըստ ոգւոյն՝ քրիստոնէական, այլ ոչ առանց վիպասանական (légendaire) ձեւոյ։

**3.** Արշակունեաց թագաւորութեան, իբրեւ իշխանութիւն, իսկութիւնն, իւր սարօքն, էր արեւելեան բացարձակ միապետութիւն, ուր կամք միապետին էին օրէնք։ Թագաւորութիւնն, թէպէտ ի բնէ բաժանեալ ի գաւառս, որոց գրեթէ իւրաքանչիւրն էր ինքնօրէն տղէկամի՝ ունէր սակայն միութեան այն կերպը, որ կը կոչուի աւատային եւ որ վաղեմի միապետութեանց շատերուն սովորական կերպն էր։ Այս միութիւնը կազմող մասնաւոր իշխանութիւնք, որպէս անուոյ շառաւիղներ, կ'երթային միանալ իբրեւ ի կեդրոն յանձին թագաւորին, որ էր «բնակ տէր երկրին» (Բուզ. Գ. ԺԱ. Ի, Ե. Ե. եւ այլուր). եւ այս ոչ միայն յառաջնում ժամանակին, յորում թագաւորութիւնն էր միահեծան, այլ եւ յետոյ եւս, մինչ ինքն իսկ թագաւորութիւնն էր աւատ սահմանակից մեծ տէրութեանց, մերթ միոյն եւ մերթ միւսոյն։ Զայս աւատային ձեւ կ'ակնարկեն մեր հին լեզուաւ բառք, «ձեռատունկ, ձեռասուն, ձեռակերտ, դաստակերտ»։ Այսպէս Տրդատ, ըստ Ագաթանգեղոսի, ի հրովարտակին առ ամե-

նայն Հայս, կ'անուանէ բոլոր երկիրը «ձեռատունկ և ձեռասուն Արշակունեաց»։ «Ամենայն Նախարարք մեծամեծք և ազատք և զօրծակալք և սիրելիք մեր թագաւորաց... [illegible] և [illegible] մեր Արշակունեաց» (Ագաթ. ԺԲ.). և Հայոց Հրովարտակն կամ Նամակ առ Թէոդոս՝ կ'անուանէ բոլոր երկիրը «դաստակերտ» Հռոմայեցւոց. «Ունիմք զանսուտ յիշատակարանսն զառաջինի Նախնեացն ձերոց, (որք) ունելով զՆւրօպէ՝ անցին և տիրեցին և Ասիացւոց կողմանցն... և յայնչափ մեծ իշխանութեան՝ [illegible] մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին» (Եղիշ. էջ 122, 123)։

Զիշխանութենէ թագաւորին, որպէս ասացաւ ի վերոյ՝ այսչափ միայն գիտեմք, թէ էր արեւելեան բացարձակ միապետական և թէ հրաման թագաւորին էր օրէնք։ Թէ կա՞ր արդեօք գէթ Նախարարական ժողով, չափաւորիչ կամ որոշիչ ի վարչութեան՝ չէ ամենեւին հաւանական. խորհուրդ նախարարաց կամ խրատն էր բարեխօսութիւն միայն կամ աղաչանք։ Հրամանք, որ կ'ելլէին թագաւորին բերնէն, ևս և անիրաւք՝ պարտէին կատարուիլ։ Այսպէս Տիրան, թոռն Տրդատայ, մին ի տկարագոյն թագաւորաց մերոց, տուաւ սպանանել զծերունին Դանիէլ, և ոչ իսկ իբրև բարեխօսութիւն յարգելով աւագանւոյն խրատն։ «Իբրև զայս (զյանդիմանութիւն Դանիէլի) լուաւ (Տիրան), ասէ Բուզանդ, բորբոքեալ ի բռնաւորութիւն դառնութեան ամբարշտութեան ցասման իւրոյ՝ տայր հրաման անդէն խեղդամահ առնել զնա։ Բայց մեծամեծ նախարարացն աւագանին շատ եդին ի մտի արքային զի մի կատարեսցէ զչարութիւն կամաց իւրոց. այլ նա ոչինչ անսաց նոցա. սպասաւորքն կատարեցին զգործ հրամանին վաղվաղակի. ճօպան ի փողս եդեալ խեղդամահ արարին զնա» (Բուզ. Դ. ԺԴ.)։ Միով բանիւ, թագաւորն էր կենաց և մահու տէր իւր բոլոր հպատակներուն՝ առանց խտրութեան մերձաւորութեան և աստիճանի։ Արշակ հրաման կուտայ Վարդանայ Մամիկոնենի, եղբօր սպարապետին իւրոյ Վասակայ, սպանանել զԳնէլ, որ էր եղբօրորդի Արշակայ (Բուզ. Դ. ԺԱ.). Վասակայ կը պատուիրէ սպանանել զՎարդան զիւրուրոյն եղբայր (Բուզ. Դ. ԺԸ). Պապ կը հրամայէ սպարապետին իւրում Մուշեղայ սպանանել զմարդպետն Հայր (Բուզ. Ե. Գ.), և հրամանքն կը կատարուին անդէն։ Եթէ պարտ է հաւատալ Խորենացւոյն՝ Արշակ զնոյն ինքն զհայր իւր զՏիրան տուաւ առնել հեղձամահ սենեկապետաց նորա (թէպէտ գաղտ). «Հեղձամահ եղև (Տիրան) յիւրոց սենեկապետաց ի հրամանէ արքայի ի գաղտնիս» (Խոր. Գ. ԻԲ.)։ Տիրանայ բացարձակ հրամանն կատարուեցաւ նոյնպէս ի վերայ Յուսկան. ոչ խնամութիւն նորա, քանզի փեսայ էր Յուսիկ Տիրանայ, և ոչ կաթողիկոսութիւնն, որ

առաջին պատիւն էր զկնի թագաւորութեան, որպէս յետ այնորիկ, նոյնպէս յառաջ՝ կարացին ազատել զմանուկ հայրապետն բացարձակ հրամանէն Տիրանայ. Յուսիկ եղաւ բրածեծ և մեռաւ. «բրածեծ եղեալ ջախջախեալ քահանայապետն Աստուծոյ, երանելին մանուկն Յուսիկ, կիսամահ կոշկոճեալ ընկեցեալ լինէր, զոր բարձեալ պաշտօնէիցն բերին ի գաւառն Տարանաղեաց ի գիւղն Թորդան, և անդ ոչինչ յետ բազում աւուրց հանգեաւ» (Բուզ. Գ. ԺԲ.)։ Ազդեցութեան տէր նախարարք ուրուք անձնական համարձակութիւնն միայն էր երբեմն թագաւորին բռնութենէն ազատող։ Այսպէս, ըստ Բուզանդայ (Գ. ԺԸ.), Արտաւազդ և Վասակ Մամիկոնեանք դիպելով առ Տիրանայ՝ կորզեցին բռնի զերկոսին տղայ մանկունս, որ մնացած էին ողջ Ռշտունեաց և Արծրունեաց կոտորածէն. «Ցայնմ ժամանակի գտանէին ի դայեակս մանկունս փախստեայս, զՏաճատ որդի Մեհնդակայ Ռշտունւոյ և միւս ևս Շաւասպ որդի Վաչէի Արծրունւոյ, տղայք ստնդիայք, զորս ածին առաջի թագաւորին։ Իբրև տեսանէր (Տիրան)՝ տայր հրաման հանել փողոտել զմանկունսն, զի նոքա և եթ ճետք մնացեալ էին յազգացն։ Եւ անդ դիպեալ Արտաւազդ և Վասակ, արք ի Մամիկոնեան տոհմէն, որք էին զօրավարք ամենայն զօրացն Հայոց՝ յարուցեալք անկան ի վերայ մանկանցն տղայոց, մէն մի յանթի հարեալք՝ ի դուրս գնացին. զէն ի վեր առեալք, կռուոյ պատրաստէին՝ ի վերայ այնց մանկանց մեռանել»։ Երբ Արշակ յանդիմանեալ ի Խադայ, ըստ Խորենացւոյն, հրամայեց քարշել և քարկոծել զնա՝ «տայգերք դստեր նորա, ասէ Խորենացին, ի մեծ նախարարութեանցն, ի կորովի և ի քաջ ազգէն Ապահունեաց, սուսերս հանեալ՝ կիսախողխող զքարշողսն առնէին, և յափշտակեալ զԽադ ի ձեռաց նոցա, յիւրեանցն գնացին գաւառս» (Խոր. Գ. ԼԲ.)։

Ոչ անհատներու միայն, այլ և ամբողջ ցեղերու ջնջումն կախեալ էր, յիրաւի կամ յանիրաւի, թագաւորին բացարձակ հրամանէն։ Այսպէս հրամանաւ կամ թոյլտուութեամբ Տրդատայ բարձաւ ապստամբ ցեղն Սլկունեաց (Խոր. Բ. ՁԴ.). Հրամանաւ Խոսրովայ նորին որդւոյ և յաջորդի՝ բարձան երկոքին անսաստ ցեղքն, Մանաւազեանն և Որդունին, նոյնպէս Բզնունեացն և Ազձնեաց (Բուզ. Գ. Դ, Խոր. Գ. Բ, Բուզ. Գ. Ը.). ցեղքն Ռշտունեաց և Արծրունեաց հրամանաւ Տիրանայ եղեն գրեթէ բնաջինջ (Բուզ. Գ. ԺԸ.), և Կամսարականացն՝ հրամանաւ Արշակայ (Բուզ. Դ. ԺԹ, Խոր. Գ. ԼԱ.)։

Ինչպէս կենաց՝ նոյնպէս ընչից և ստացուածոց բացարձակ տէր էին Արշակունի թագաւորք։ Պարգևք կ'ելլէին անմիջապէս թագաւորէն։ ԶԱրտաշիսէ ասէ Խորենացին, թէ Սմբատայ սպարապետին իւրում, յետ պատերազմին Կասպից, տուեալ կալուածս ի պար-

գե. «Իսկ Սմբատայ երթեալ հնազանդէ զամենեսեան... վասն որոյ արժանի ըստ վաստակոցն պարգևէ նմա Արտաշէս զմասն արքունի որ ի շէնս Գողթան և զՈւղտու ակունս, և առ այսոքիւք և զաւարն ամենայն նմա թողու» (Խոր. Բ. ԾԳ.)։ Նոյնպէս Տիրան Ա., ըստ նմին Խորենացւոյ, կուտայ երևելի կալուածներ Դրուասպայ ումեմն Պարսկի, որ էր օգնական Երախնաւու, խնամակալուին տէրութեանն. «Զոր (զԵրախնաւու) սիրեալ արքայի՝ տայ նմա զգահն երկրորդական, և զհոգս արևելեան զօրուն ի նա հաւատացեալ՝ առ նմա թողու զԴրուասպ ոմն պարսիկ, զմտերիմ իւր, որ խնամացեալ էր ընդ նախարարս Վասպուրականի, որում տուեալ էր զաւանն Տատեօնս հանդերձ ագարակօքն, և զայգին մեծ յոր մտանէր առուն՝ գետ հանեալ ի ծովէն Գայլատուայ» (Խոր. Բ. ԿԲ.)։ Ըստ Բուզանդայ, Խոսրով, իբրև բացարձակ տէր երկրին՝ յետ պատերազմին Մազքթաց, կուտայ զօրավարաց իւրոց, մանաւանդ Վաչէի որ սպարապետն էր՝ երկիրներ. «Ապա ետ հրաման թագաւորն Հայոց Խոսրով տալ պարգևս արանցն քաջաց, որ վաստակեցին նմա և փոխանակեցին զանձինս իւրեանց փոխանակ աշխարհին Հայոց մեծաց յամենայն մարտս ճակատուցն պատերազմաց։ Եւ ետ Վաչէի զօրավարի զականս Ջանջանակին և զՋրաբաշխիս և զՑլու գլուխ ամենայն գաւառակօքն հանդերձ. Նոյնպէս և այլոց նախարարացն մեծամեծ պարգևս» (Բուզ. Գ. Ը.)։ Եւ զՊապայ ասէ նոյն Բուզանդ, թէ յետ ճակատուց որ եղան ընդ Պարսս, յորոց մին էր Ձիրաւին, զոր կը պատմէ նաև Խորենացին՝ շատ պարգևներ և գիւղեր տուաւ Մուշեղի. «Յայնմ ժամանակի բազում պարգևս և պատիւս և բազում գիւղեան զօրավարին Մուշեղի Պապն շնորհէր» (Բուզ. Ե. Դ.)։ Ոչ պարգև և կալուած միայն, այլև նախարարաց ամբողջ երկիրն, մանաւանդ յանցաւորներուն, ուրիշ նախարարի տալու իշխանութիւն ունէին թագաւորք մեր։ Տրդատայ համար կը պատմուի, թէ Սղկունեաց երկիրն ի Տարօն տուաւ Մամգունայ, Մամիկոնեանց նախնւոյն ի ժառանգութիւն (Խոր. Բ. ՁԴ.), և որդի նորա Խոսրով զերկիր ապստամբ բդեշխին Բակրոյ տուաւ Վաղինակայ Սիւնւոյ (Բուզ. Գ. Թ.)։ Չէր անսովոր թագաւորաց մերոց յարքունիս գրաւել երկիրներ։ Այսպէս Խոսրով զտուն Դատաբենայ գրաւեց յարքունիս. «Եւ զտուն նորա կալան յարքունիս» (Բուզ. Գ. Ը.), և Արշակ գրաւեց Արշարունեաց երկիրներն. «Զտոհմս Կամսարականացն որ էին գաւառաց տեարք, Շիրակայ և Արշարունեաց, ազգատ առնէր (Արշակ), և զգաւառսն ունէր յոստան» (Բուզ. Դ. ԺԹ.)։ Ահա արևելեան բացարձակ միապետութեան կատարեալ պատկեր։ Ե՞ր հնար ա՛յլ ազգ սպասել թագաւորէ, ու չէր ընդհատ յիւրմէ դրացւոյն, գոռոզ պարթե-

ւականէն, հանդերձիւ և ձևով անգամ, ինչպէս կը ցուցնեն առա-
ջին ժամանակին Արշակունեաց դահեկանք արևելեան խուրիւ, որ հա-
գիւ կը տարբերի յայնմանէ, զոր կը կրէին թագաւորք պարթևք,
ինչպէս կը տեսնուի ի դահեկանս այս վերջնոց։

Չկարէր լինել տարբեր պարթևականէն նաև վարչական դրու-
թիւնն իւր բոլոր ճիւղերով։ Կատարեալ վարչական յերիւրուած ինչ-
պէս առ մեօք, բաժանեալ պաշտօնարաններու, գլխաւորներուն ան-
գամ, ինչպէս ելևմտից, դատաստանի, ոստիկանութեան, զինուորու-
թեան՝ չէ հաւանական՝ թէ եղաւ երբէք ի Հայս։ Գործակալք կը
յիշուին արդարև, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, իբրև պաշտօնեայք,
բայց ոչ այժմու մտօք, իբրև գլխաւորք իւրաքանչիւր մէն միոյ
մասին վարչութեան։ Կար աւագութիւն և կրտսերութիւն ի գործա-
կալութեան, բայց ոչ կանոնաւոր ստորակարգութիւն։ Այնպէս ծա-
ռայ էին թագաւորին բդեշխք և աւագ նախարարք, ինչպէս ստո-
րին սպասաւորք, զորս «ոտնկայս գործակալութեան» կը կոչէ Բու-
զանդ։ Բուզանդ չխտրեր կոչել ծառայս թագաւորին ճոխ իշխաններ,
որպիսի էին բդեշխն Աղձնեաց, և Կորդուաց, Ծոփաց, Սիւնեաց,
Հաշտենից իշխաններն. «Զայնու ժամանակաւ ապստամբեաց յար-
քայէն Հայոց մի ի Ծ——յից նորա մեծ իշխանն Աղձնեաց, որ անուա-
նեալ կոչէր բդեաշխն, որ էր մի ի չորից, գահերէց բարձերէց տա-
ճարին արքունի։... Ապա առաքէր թագաւորն Հայոց զբարեկիր Ծ—
—յ» իւր, զիշխանն Կորդուաց զՋոնն, և զիշխանն մեծի Ծոփաց
զՄար, և զիշխանն Սիւնեաց զՎաղինակ, և զիշխանն Հաշտենից
զԴատ հանդերձ բազում զօրօք» (Բուզ. Գ. Թ.)։ Այժմու պաշտօ-
նեայք ևս կը կոչեն իւրեանց տէր զթագաւորն, բայց նշանակու-
թեամբ գլխոյ և ոչ տեառն, և են պատասխանատու, բայց ազատ
վարիչք այլևայլ մասանց միևնոյն քաղաքական մարմնոյ։ Քաղաքա-
կան կամ վարչական յերիւրուածոյ այս ըմբռնումն բոլորովին օտար
էր յոգւոյ արևելեան բացարձակ միապետութեան։ Միով բանիւ, արև-
ւելեան քաղաքակրթութիւնն, ոչ միայն պարսկականն և պարթևա-
կան թանձր և նիւթական, այլ և ոչ հելլենականն վերացեալ և փի-
լիսոփայական՝ ունեցաւ վարչական գործերու բաժանման գաղափարը։
Ինչպէս բուն օրէնսդրութեան, նոյնպէս բուն վարչութեան յղացումն
է հռոմէական քաղաքակրթութեան ծնունդ, զոր արդի եւրոպա-
կանն հասոյց ի կատարելութիւն։

**4.** Ելևմտական դրութիւնն առ Արշակունեօք չկարէր լինել
տարբեր յայնմանէ որ էր առ Պարսիկս։ Տէրութեան կամ մանաւանդ
թագաւորին, (քանզի չկար բառին բուն նշանակութեամբ տէրու-
թիւն. տէրութիւն, ըստ բանից գաղղիացի խրոխտ միապետին, «Տէ-

քութիւն ես եմ»՝ էր անձն թագաւորին), եկամուտն էր կալուածական, յարգեանց մշակութեան և հովուութեան։ Գաւառներէն շատք էին կալուած արքունի, որ կը կոչուէին տուն թագաւորին, ընդ տեսչութեամբ մարդպետաց (տես Բուզ. Ե. Ը. և այլուր). թերևս կ'առնուէր մասն նաև այն գաւառներէն, որ էին կալուած նախարարաց։ Նաև եկամուտք եկեղեցւոյ առ քրիստոնէութեամբ էին կալուածներէ, զորս շնորհեցին առաջին քրիստոնեայ թագաւորք, մանաւանդ նախածանօթն Տրդատ, որ հին հեթանոսական մեհենից կալուածներն, և այլ ևս բազում, սեպհականեց ի ժառանգութիւն եկեղեցւոյ, որպէս պատմէ Ագաթանգեղոս։ «Եւ զգաստակերտն (Անահտական մեհենին) հանդերձ գետնովքն և սահմանօք նուիրեցին եկեղեցւոյ ի սպասաւորութիւն» (Ագաթ. ծԸ.)։ «Եւ զաւանն (մեհենին յԱնի) ամրաւն հանդերձ ի ծառայութիւն եկեղեցւոյ նուիրէին» (ծԹ.)։ ԶՏրդատայ ասէ առանձինն. «Եւ թագաւորն յամենայն իշխանութեան իւրում առ հասարակ գրեաց չորս չորս հողս յամենայն ագարակ տեղիս. իսկ յաւանսն՝ եւթն եւթն երդոյ հող, ի ծառայութիւն սպասաւորութեան եկեղեցւոյ նուէր պտղոց Տեառն մատուցանէր» (ծԺԹ.)։ Նոյնպէս Խոսրով, որդի Տրդատայ, Մանաւազեանց և Որդունեաց բուն քաղաքներն հանդերձ սահմանօք նուիրեց եկեղեցւոյ. «Եւ ետ (Խոսրով) զաւանն և զբուն գահոյից գիւղն նահապետին Մանաւազենից զՄանաւազակերտ ամենայն սահմանօքն և գաւառական հանդերձ, և զբուն գիւղն Որդունեաց որոյ անուն էր Որդորու՝ ամենայն սահմանօքն՝ յեկեղեցի» (Բուզ. Գ. Դ.)։ Գրիգոր ունէր ինքեան և իւր տոհմին համար առանձին կալուած, որպէս ասէ Բուզանդ՝ զԹորդան և զԹիլ, առաջինն՝ ի Դարանաղիս, և երկրորդն՝ յԵկեղեաց. «Իսկ սոցա (Գրիգորի և Արիստակեայ) պատրաստեցան տեղիք բնակութեան և շիրիմք հանգստեան, մեծին Գրիգորի՝ ի Դարանաղեաց գաւառին, ի գիւղն որ անուանեալ կոչի Թորդան, և սրբոյն Արիստակեայ որդւոյ նորա՝ յԵկեղեաց գաւառի, ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ» (Բուզ. Գ. Բ.)։ Բուզանդ այլուր մինչև հնգետասան կը հանէ զգաւառս տան Լուսաւորչին առ Ներսիսիւ. «Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն, զի հնգետասան գաւառ ունէին իբրև սեպհական ի բնմէ, յԱյրարատ, ի Դարանաղէ, յԵկեղեաց, ի Տարօն, ի Բզնունիս, ի Ծոփս, և որ ընդ մէջ նոցա և շուրջ զնոքօք»։ Կ'երևի թէ եկեղեցւոյ կալուածներուն յաճախութիւնը տուած էր տեղի գանգատանաց, մինչև մարդպետին Արշակայ մեղադրել, կամ որպէս ասէ Բուզանդ՝ «թշնամանս դնել Տրդատայ... ազգի, տակի և տոհմի Արշակունեաց, թէ զիա՞րդ զայնպիսի տեղիս կանանցահանդերձ մարդ-

կան տուեալ է» (Բուզ. Դ. ԺԴ.)։ Պապ նուազեցուց կալուածներն նոր իմն կարգադրութեամբ. գրաւեց եկեղեցւոյ հողերուն հինգ եօթներորդը՝ թողլով միայն երկուս, և առ իւրաքանչիւր հող մէն մի երէց և սարկաւագ, մնացեալներն առնլով ի ծառայութիւն արքունեան։ «Հատ յարքունիս Պապ թագաւորն զհող եկեղեցւոյն, զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյն ընդ ամենայն երկիրն Հայոց. զի յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս, և թողոյր միայն երկուս հողս, և ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գեւղ մի, երէց և սարկաւագ, և զայլն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութիւն զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագացն» (Բուզ. Ե. ԼԱ.)։ Չայս կը յիշէ Բուզանդ իբրև ի հեճուկս Ներսիսի գործուած, բարդելով, ինչպէս պիտի տեսնենք յիւրում տեղւոջ՝ անթիւ զրպարտութիւններ մանուկ թագաւորին վրայ, որ կատարեց՝ ինչ որ 1,500 ամօք յետոյ հազիւ իշխեց կատարել բարեկարգիչ կայսր մը (Յովսէփ Բ.) ի կարճումն դատարկապորտներու բազմութեան, որոց եկեղեցական եկամտից առատութիւնը պատճառ եղած էր տալոյ զանձինս եկեղեցական և վանական յուլութեան։ Յարգեանց մշակութենէ էր ոչ միայն եկամուտ թագաւորին և եկեղեցւոյ, այլև շատ անգամ օտար տէրութեանց տրուած հարկն, որոյ տեսակներն էին հաս, մուտ, սակ, բաժ։ Այսպիսի էր մեծ մասն հարկին զոր կու տային Հայք Սասանեանց յետ անկման թագաւորութեանն ըստ Եղիշէի, որ յետ գանգատելոյ, թէ «ծանրացուցին զհարկ աշխարհին, քանզի ուստի արժանն էր առնուլ հարիւր դահեկանաւ չափ, կրկին առնուին»՝ կը յաւելու. «Նա բնաւ ո՞վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից լերանց և դաշտաց և մայրեաց» (Եղիշ. էջ 40), և այլուր (էջ 76), «իսկ զմտից և զսակից և որ այլ ևս էին հարկ աշխարհին՝ բազմագոյն քան առ հարբն նորա երթայր յարքունիս»։ Նաև պարգևք որ կ'ելլէին ի թագաւորաց՝ էին մանաւանդ կալուածք, քան ոսկւոյ և արծաթոյ մեծամեծ գումարներ։ Պարգևք զորս Արտաշէս, Տրդատ, Խոսրով, Պապ ետուն զօրավարաց և այլոց, ինչպէս տեսանք ի վերոյ՝ էին կալուածք։ Բուզանդ ի յիշելն Յոհան անուն եպիսկոպոսի ուրուք խեղկատակութիւնն, որով կը կորզէր նա պարգև ի թագաւորաց՝ չյիշեր ոսկւոյ և արծաթոյ գումար, այլ կնքուած մուրհակներ գիւղից և ագարակաց։ «Յոհան եպիսկոպոս որդի Փառինայ, յորժամ երթայր առ թագաւորսն Հայոց, խաղկատակ լինէր նոցա։... Ի չորք անկեալ յոտս և ի ձեռս՝ սողէր առաջի թագաւորացն և զուղտու զձայն աճէր կառաչելով, և ընդ կառաչելն ապա մի մի

քան խառնէր ասելով. Ուղտ եմ, ուղտ եմ, և զարքայի զմեղս բառնամ. դի՛ք ի վերայ իմ զմեղս արքայի, թող բառնամ։ Իսկ թագաւորքն զմուրհակս դիւղաց կամ զագարակաց գրեալ և կնքեալ դնէին ի վերայ ողինն Յոհաննու փոխանակ ընդ մեղաց իւրեանց. և ի թագաւորացն Հայոց ստացաւ իւր գեւղս և ագարակս յուղտն լինելոյ և զմեղսն բառնալոյ» (Բուզ. Զ. Ժ)։ Այսպէս ունելն կալուածական հարստութեան զաեղի դրամականին՝ կը ցուցնէ, թէ երկիրն էր տակաւին մեծաւ մասամբ այն շինական հեշտ պարզութեան մէջ, յորում գտաւ զնա Քսենոփոն Արշակունեաց թագաւորութեան սկիզբէն իբր 200 ամօք յառաջ։ Դրամի այս նուազութեան գլխաւոր պատճառ կրնայ համարուիլ թերևս չունենալն Արշակունեաց սովորութիւն, կամ մանաւանդ արտօնութիւն, հատանելոյ առանձին դահեկան, բաց առաջնոյ ժամանակին, այն է Արտաքսիասայ ցեղին թագաւորներէն, որոց դահեկաններէն հասած են մինչև առ մեզ. հարկատուութեան ժամանակ հաւանական է թէ կորոյս երկիրն այս իրաւունքը՝ շատանալով գործածել պարսիկ և հռոմայեցի դահեկաններ։ Չէ պարտ կարծել սակայն, թէ այս պատճառաւ Հայն էր յայնժամ հէք և գծուծ։ Եթէ ճշմարիտ է ականատեսին Քսենոփոնի նկարագիրն զոր բերաք այլուր՝ Հայն ունէր իւր ստորերկրեայ տուներուն մէջ ոչ միայն կերակուր և ըմպելի առատ, այլ և անուշահոտ օծանելիս։ Դրամը չէր կարևոր որչափ զարդիս նոյնչափ ի հնումն, մինչ կը տիրէին դեռ փոխանակութիւնն և բռնի աշխատութիւն։ Վաճառականութիւնն Տիւրոսի ըստ Եզեկիելի (գլ. Իէ.), գէթ մեծաւ մասամբ, էր փոխանակութիւն։ Մարգարէն, յետ յիշելոյ այլևայլ երկիրներէ բերուած նիւթեր ի վաճառ, Կարքեդոնէ, ի Յունաց, ի տանէ Թորգոմայ, ի կղզեաց Միջերկրականին, ի Հրէաստանէ, Ասորւոց երկրէն, յԱրաբիոյ, յԵգիպտոսէ, ի Մարաց—արծաթ, ոսկի, պղինձ, անագ, կապար, պղնձի անօթներ, ձի, ջորի, փղոսկր, երփն երփն նարօտից, խունկ, մեղր, իւղ, գինի, ուղտ, խոյ, որոջ, անուշահոտ իւղեր, պատուական քարեր, բեհեզ, այլովքն հանդերձ՝—կը յաւելու. «Եւ երթևեկացն տայիր զվաճառս քո բազմացեալս յաղխամաղխէ քումմէ»։ «Եգիպտոս առնոյր ոսկի, փղոսկր և գերիս յԵթովպիայ, խունկս յԱրաբիայ, գինիս՝ ի Յունաց և ի Փիւնիկեցւոց, աղ՝ ի Սահարայ, և ինքն տայր ընդ այնր ցորեան և այլ ևս նոյնպիսիս, և մանաւանդ Արաբիա կերակրէր միշտ ցորենով նորա» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. հտ. Ա. 59)։ Եգիպտոսի և Ասորեստանի հրաշակերտք, յորոց ոմանք կանգուն են, այլոց մնացորդք միայն կան՝ չկանգնեցան արծաթով։ Յուրանք կամ բրգունք Եգիպտոսի շինուեցան հացիւ և խստորով։ Խոսրով Բ. տնկելու համար իւր կրկին

անտառներն՝ Հրաման կու տայ սպարապետին իւրում Վաչէի, «Հանել խաշար (Հասարակ զինուոր) յաշխարհէն բազում, և բերել զվայրենի կաղին մայրեաց և տնկել զայն յԱյրարատեան գաւառին» (Բուզ. Գ. Ը.)։

**5.** Գալով դատաստանական վարչութեան՝ չէ հաւանական թէ կային յայնժամ ի Հայս արդի ոճով օրինագիրք և ատեանք։ Յայտնի է սակայն, թէ չէին և չկարէին անծանօթ լինել Հայոց ընկերական կարգաց գէթ էականներն, որպէս կենաց և սեպհականութեան իրաւունք, ամուսնութիւն, տուրևառ, այլովքն հանդերձ։ Լեզուն ազգերու մտաւոր և բարոյական զարգացման պատկերն է, և գաղափարք որոց նշաններն են բառք՝ չեն կրնար առնուլ ծնունդ, եթէ իրք նշանակեալք նոքօք՝ չէին կանխաւ ընտանեցած և իբր թէ տպաւորուած ժողովրդեան բարուց և սովորութեանց մէջ։ Արդ՝ հայերէն լեզուն ի վաղուց անտի ունի կենաց այլևայլ յարաբերութիւններն նշանակող ամէն բառ, սկսեալ ընտանեկանէն մինչև քաղաքականն։ Հայերէնն ունի ազգականութեան բոլոր աստիճաններուն անուններն, ոչ միայն հարազատներուն, այլև խորթերուն. հօր և մօր և որդւոյ հետ՝ գիտէ նաև յօրայ, մօրու և որջու. նաև խնամութեան անուններ մանր մասամբ։ Կը խտրէ կենաց այլևայլ վիճակներ, ինչպէս ամուսնութիւն, այրութիւն և ամուրութիւն. գիտէ նաև տէր և ծառայ։ Թէպէտ չկար Հայոց մէջ հին ազգերէն ոմանց այն ժողովրդական բաժանումը, զոր Եւրոպացիք սովոր են կոչել [illegible]՝ կար սակայն ազատ և շինական, այսինքն՝ հողատէր և մշակ, որ կը թուի պատասխանել սէրֆ կամ վարձակալ (fermier) կոչուած աստիճանին։ Սեպուհ անունը, որմէ կ'ելլէ սեպհականութիւն բառը՝ կը տրուէր ազատաց, այսինքն նախարարական տոհմին, և կը նշանակէր՝ Այն որ ունի իրաւունս սեպհականութեան, այսինքն ստանալոյ երկիր։ Սեպուհ բառին ուրիշ ձևն է [illegible], որ կը նշանակէր զինուոր, մանաւանդ ձիաւոր։ Այսպէս կը տեսնուի, թէ հողատէր և զինուոր էր ի բնէ ժողովրդեան ազատ մասն, ինչպէս շինականն էր երկասէր կամ աշխատող (industriel) մասն, այսինքն՝ մշակ, ձեռագէտ և թանգար (commerçant)։ Ահա փառաւոր ազնուականութիւն մի առընթեր պատուաւոր քաղաքացութեան։

Չէ հնար թէ չկային այս յարաբերութիւններն կարգադրող և ի հաւասարակշռութեան բռնող եթէ ոչ օրէնք, գէթ պայմանք։ Խորենացին ուրեք կը թուի հաստատել, թէ կային այսպիսի գրաւոր պայմանք։ Մեր զգօն պատմիչն յետ մեղադրելոյ հին Հայոց անփութութիւնն ի թողուլ պատմական յիշատակներ՝ կը յաւելու. «Այլ ասիցէ ոք արդեօք, վասն ոչ լինելոյ գիր և դպրութիւն ի ժամանակին, կամ վասն պէսպէս պատերազմացն որ կուռ զմիմեանց զկնի

անհետ ի վերայ գալին։ Այլ ոչ արդարև այսոքիկ կարծեցեալ լինի, քանզի գտանին և միջոցք լեալ պատերազմացն, և գիր Պարսից և Յունաց, որով այժմ գիւղից և գաւառաց (այսինքն՝ անշարժ ստացուածոց), և իւրաքանչիւր տանց առանձնականութեանց (այսինքն՝ ընտանեկան յարաբերութեանց, ինչպէս ամուսնութեան, ժառանգութեան և այլն) և հանուրց հակառակութեանց և դաշանց (այսինքն՝ պարտուց, փոխոց և՛ ուրիշ առևտրական պայմաններու) այժմ առ մեզ գտանին անբաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեանն պայազատութիւն» (այսինքն Նախարարական տոհմերու անհատներուն յաջորդութեան և ուրիշ իրաւանց, թերևս նաև այն տոհմերուն յարաբերութեան և պայմաններուն շինական մասին հետ) (Խոր. Ա. Գ.)։ Թէ ընկերական կարգաց և պատշաճից վրայ կար ճշգրիտ գաղափար ի Հայս՝ առ այս ունինք նաև պատմական ապացոյց։ Նշանաւոր է զոր ինչ ասէ Խորենացին, և աւելի մանր՝ Բուզանդ, Արշակաւանի պատմութեան առթիւ։ Բուզանդինը բերենք նախ ի մէջ, թէպէտ այլուր կոչած ենք. «Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն (Արշակ) դաստակերտ մի ի Կոգ գաւառի։ Եւ ետ հրաման ընդ ամենայն գաւառս իշխանութեան իւրոյ, և հրամայեաց կարդալ քարոզ ընդ ամենայն տեղիս աշխարհացն, և զամենայն կողմանս գաւառաց իւրոց լի առնէր հրամանաւն արքունի, զի եթէ ոք ումեք ինչ պարտիցի, եթէ ոք ումեք ուստեք ինչ վնասեալ իցէ՝ ամենեքեան եկեսցեն ի դաստակերտն զոր շինեաց։ Եթէ արիւնական ոք իցէ, կամ վնաս ումեք արարեալ իցէ, կամ զկին ուրուք տարեալ իցէ, կամ ոք զուրուք կարասի ունիցի, և կամ ոք յումեքէ երկիւղած ինչ իցէ և եկեսցէ յայն տեղի՝ դատ և իրաւունք մի լիցին։ Իսկ եթէ ոք ումեք ինչ պարտիցի, և որում պարտիցին գայցէ յայն տեղին՝ առանց դատի և իրաւանց կալցեն զնա և ի դուրս տարցին։ Իբրև ել հրամանն յարքայէն՝ ժողովեցան այնուհետև յայն տեղի ամենայն գողք և աւազակք, գանձահատք, զրկողք, յափշտակողք, արիւնականք և սպանողք։ Բազում կանայք զարս թողեալ, բազում արք զիւրեանց կանայս թողեալ և զայլոց կանայս առեալ, բազում ծառայք զիւրեանց տերանց զգանձս ըմբռնեալ, բազում աւանդառուք զաւանդս և զպահեստս բարձեալ՝ փախուցեալք անդր անկանէին։ Զի թէպէտև կարի յոյժ բազմացաւ աղաղակն՝ դատ չկայր, և իրաւունք ումեք յարքունուստ ոչ ելանէին. վասն այսորիկ ամենայն մարդ հառաչելով վայէին թէ իրաւունք մեռան» (Բուզ. Դ. ԺԲ.)։ Զնոյն ասէ և Խորենացին թէպէտ համառօտիւ. «Ի թիկանց կուսէ լերին Մասեաց շինեաց (Արշակ) ձեռակերտ, ժողով մարդկան մեղաւորաց, և ետ հրաման, որ ոք

անկեալ անդր բնակեսցէ, մի՛ լիցի ի վերայ նորա իրաւունք դատաստանի։ Եւ նոյն ժամայն ծովացեալ լցաւ մարդկութեամբ Հովիտն ամենայն, քանզի աւանդառուք և պարտականք և ծառայք և վնասակարք և գողք և սպանողք և կնահանք և այլք այսպիսիք փախուցեալք անդր անկանէին, և ոչ կայր նոցա այց և խնդիր» (Խոր. Գ. Իէ.)։ Չէ ամենևին հաւանական, թէ Արշակ այնպիսի հրաման հանեց իւր տէրութեան մէջ հրապարակաւ և յայտնի։ Զայս ևս պարտ է դասել ի համարի այն զրպարտութեանց, զորս կղերամոլ պատմիչք մեր սովոր են բարդել ազատամիտ թագաւորաց և իշխանաց վրայ։ Սա չափ միայն կրնայ ընդունուիլ իբրև պատմական՝ թէ թերևս կար ներողութիւն իմն կամ ազատութիւն ծառայից և այլոց, որ յանցաւոր կամ վնասակար գտնուելով նախարարաց հակառակորդաց Արշակայ՝ կը դիմէին յԱրշակաւանն, ինչպէս կայ արդի տէրութեանց ոմանց մէջ ազատութիւն, նա՛ պաշտպանութիւն իսկ քաղաքական յանցաւորաց դիմելոց առ նոսա։ Զիարդ և իցէ՝ պատմութիւնը կը ցուցնէ, թէ ընկերական յարաբերութեանց եղծմունք համարուած էին յանցուած և ոճիր, և սակայն, «Դատ և իրաւունք մի՛ լիցին»՝ կը ցուցնէ, թէ այնպիսի եղծմանց համար կային դատաստանք և պատիժք, ուստի և դատաւորք և դատաստանարանք ի պաշտօնէ և ընդ իրաւասութեամբ վերին իշխանութեան իրիք։ Զայս կ'ակնարկէ բառն «արքունուստ», զոր կը յաւելու Բուզանդ. «Եւ իրաւունք ումեք յարքունուստ ոչ ելանէին»։ Ապա հաւանական է, թէ օրէնսդիր և դատաւոր ընդարձակ մտօք էր թագաւորն, թերևս նաև իւրաքանչիւր նախարար իւր երկրին մէջ։ Չէ պարտ թողուլ առանց յիշատակութեան Եզնկայ սա նշանաւոր հատուածը. «Ընդէր օրէնք ի թագաւորաց դնիցին, և սաստք յիշխանաց, և պատիժք ի դատաւորաց. ո՞չ ապաքէն վասն կարճելոյ չարեացն։ Եթէ բնութեամբ իցեն չարիքն՝ ոչ պարտի օրէնսդիրն օրէնս դնել, և ոչ իշխանն պատիժս ի վերայ չարագործին ածել։... Տեսանեմք թէ թագաւորն զիւրոց օրինաց վրէժս պահանջէ, և պահանջմամբ վրիժուցն զվնասն կարճէ. և դատաւորն զգողն և զաւազակն պրկէ և քերէ վասն զվնասակարութիւնն ի միջոյ բառնալոյ. և հայր զորդի դժնեայ մահապարտեալ՝ դատաւորաց մատնէ, և այլքն ամենեքեան զիւրաքանչիւր զանցնիւր զանարգանաց վրէժս պահանջեն կամ անձամբ, կամ իշխանօք» (Եզն. Ա. ԺԵ)։

Եզնիկ կը խօսի Հայոց, և կը խօսի իբրև արդէն սովորական և ծանօթ նոցա, թէ կար դատական և պատժական իշխանութիւն, կը ցուցնէ նաև թէ պատիժք էին, ըստ ոգւոյ ժամանակին՝ խիստ և մարմնաւոր։ Զայս կը ցուցնեն նաև մահապարտաց սահմանեալ

բանտեր, որ կը յիշուին ի պատմութեան։ Չարագործաց համար սոսկալի բանտ էր վիրապն Արտաշատու, զոր ահեղ իմն կը նկարագրէ հեղինակն Ագաթանգեղոսի. «Հրաման տայր (Տրդատ) կապեալ ոտիւք և կապեալ ձեռօք և կապեալ պարանոցաւ խաղացուցանել զնա (զԳրիգոր) յԱյրարատ գաւառ, և տալ զնա ի դղեակ բերդին Արտաշատ քաղաքին, և իջուցանել ի վիրապն ներքին» (Ագաթ. ԺԱ.)։ Եթէ պարտ է հաւատալ Ագաթանգեղոսի՝ վիրապն ոչ միայն էր «անհնարին խորութեամբ», այլ և էր բնակութիւն ահագին օձերու։ Երբ Խոսրովիդուխտ, ըստ Ագաթանգեղոսի, կը պատմէ զիւր տեսիլն, որ կը հրամայէր հանել զԳրիգոր ի վիրապէն՝ «մարդիկն, ասէ, որ լուան»—կամի ասել պալատականք—«սկսան ծիծաղել զբանիւն, և ասեն. Եւ դո՛ւ ուրեմն մոլեգնեցար, դև՞ ուրեմն հարաւ ի քեզ. այս հնգետասան ամ է, զի ընկեցին զնա յանհնարին խոր վիրապն, և դու ասես եթէ կենդանի է. արդ և ոսկրոտին իսկ ո՞ւր իցէ, զի նոյն օրին իբրև իջուցին զնա անդր՝ յօձիցն իսկ տեսլենէ նոյն ժամայն սատակեալ իցէ» (Ագաթ. Ի.)։ Ագաթանգեղոս նոյն իսկ Գրիգորի կուտայ յիշել զահաւորութիւն այն օձաբնակ տեղւոյն, ուր որպէս թէ հրաշիւք պահուեցաւ նա կենդանի. «Իսկ վասն իմ դու իսկ գիտես, զի հնգետասան ամ կայի ես ի խաւարչուտ ի խոր յանհնարին վիրապին. ի մէջ օձիցն էր բնակութիւն իմ» (Ագաթ. ԻԱ.). և այլուր (անդ)—«Կեցցէ՞ արդեօք միօրեայ մարդ յանհնարին ի խոր վիրապի անդ յայնմիկ, յորում թաղեալն կայի ես ի մէջ օձիցն իբրև ի շեղջի, և եռային զմարմնովք իմովք, պատեալ կային շուրջ զինև, և կալտռային զանդամովք իմովք»։ Յայտնի է թէ վիպասանութիւնը մեծ մասն ունի այս նկարագրին մէջ, որոյ դիտումն է ստուարացունել այն կարծեցեալ հնգետասանամեայ բնակութեան ահաւորութիւնը, որպէս զի Գրիգորի պահպանութիւնն այնպիսի տեղ և այնչափ ժամանակ՝ ընծայուի ամենախնամ զօրութեան միջամտութեան։ Իբրև պատմական ստոյգ է սակայն, թէ բերդն Արտաշատու էր բանտ մահապարտաց, թերևս ունէր նաև ներքին ստորերկրեայ մասն մեծեղեռն յանցաւորաց համար։ Նոյն Ագաթանգեղոս կը յիշէ այլուր դահճապետ և մասնաւոր տեղի կառափման. «Ելեալ դահճապետն պարծելով չարամահ առնել, եւ հանել զնոսա (զԳայիանէ և զընկերս նորա) շղթայիւք ի քաղաքէն ընդ դուռն հարաւոյ, ընդ կողմն պողոտային, որ հանէր ի Մեծամօրի կամուրջն, ի տեղին յայն, ուր սովոր էին սպանանել զամենայն մահապարտս» (Ագաթ. ԺԹ.)։ Նաև Բուզանդ կը յիշէ «դահճապետ» և «տեղի կառափելոյ» մօտ ի Նահապիվան, բանակատեղին թագաւորաց, թերևս յանցաւոր զինուորաց համար։ Անդ գլխատուեցաւ Գնէլ։ «Բուռն հարեալք ընկենուին

յերիվարէ անտի զպատանեակն Գնէլ, և ձեռն յետս կապէին զնա, և առեալ գնացին ի տեղի կառափելոյն։... Մինչդեռ Ներսէս բանս ողոքոյ ընդ Թագաւորին խօսէր՝ գայր արտաքուստ դահճապետն Երազմակ, մտանէր ի խորանն արքունի. սկսանէր պատմել. Ի գլուխ հանի, կատարեցի, ասէ, զամենայն հրամանս արքունի. առի գնացի զԳնէլ, տարայ մինչև յորմ Սիւսին, սպանի և անդէն թաղեցի» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Օրինակ պատժելոյ զյանցաւորս, որպէս արդէն ասացաւ՝ էր արդարև բարբարոսական ըստ ոգւոյ ժամանակին, որ կը համարէր զպատիճն, իբրև վրէժխնդրութիւն մանաւանդ քան ուղղութիւն, և զանագորունութիւն ընդդէմ յանցաւորաց՝ իրաւանց մասն։ Բայց և այնպէս յետին անագորոյն տանջանաց օրինակներ յանուն պատժական իշխանութեան կարի սակաւ են մեր պատմութեան մէջ, և այն սակաւք որ կը պատմուին՝ են կամ հանճարեալ, և կամ թելադրեալ։ Այսպէս այն քստմնելի և նորագիւտ տանջանք, զորս Ագաթանգեղոս կը պատմէ տրուած ի Տրդատայ Լուսաւորչին և Հռիփսիմեանց՝ են վկայաբանական գիւտ։ Յետ շարելոյ իբր երկոտասան ազգս տանջանաց, մին քան զմիւսն քստմնելի, որոց վերջինն էր թափելով հալած կապար, «ջերմ մինչդեռ էր իբրև զջուր», այրել «զմարմինս նորա առհասարակ»՝ կը յաւելու. «Եւ ոչ մեռաւ, այլ կայր մեծ ուժով, և զինչ հարցանէին՝ վաղվաղակի տայր պատասխանի» (Ագաթ. Ժ.)։ Հռիփսիմէի լեզուն կը կտրեն, և պրկելով ի չորս ցիցս՝ վառած կանթեղներով կը խորովեն մարմինը «ցմեծ ժամս», յետոյ քարեր վարելով գոգը՝ դուրս կը վայթեն զաղիսն, ապա կը փորեն զաչս նորա, «և դեռ ևս, ասէ, կենդանի կայր» (ԺԸ.)։ Նոյնպէս զԳայիանեանս պրկելով մէն մի ի չորս ցից՝ կը ծակեն անոնց մորթն ի պճղանց, և դնելով փող և փչելով՝ կենդանւոյն կը մորթեն (մորթը հանել) զնոսա մինչև ի ստինսն. ի վերջոյ կը հանեն զլեզուս նոցա ծոծրակներէն, և դուրս կը թափեն զփորոտին նոցա, բայց զարմանք, «դեռ ևս, ասէ վկայաբանն, կային կենդանի» (ԺԹ.)։ Արդարև վկայաբանական չափազանցութիւններ։ Պատմական է սակայն հալածելն Սահակայ չարաչար տանջանօք՝ ըստ Կորեան Բարբարիանոս (Կոր. էջ 18), ըստ Խորենացւոյն Բորբորիտոն կոչուած հերետիկոսներն (Խոր. Գ. ԾԷ.), բայց, ինչպէս յայտնի է Ատտիկոսի թուղթէն առ Սահակ՝ այս եղաւ ի թելադրութենէ Կոստանդնուպոլսոյ մոլեռանդ պատրիարքին։ Խորենացին յետ պատմելոյ, թէ սուրբն Սահակ «հրամայէ (Մեսրոպայ) քննել զժանտագործ Բորբորիտոնսն, և եթէ ոչ հեզութեամբ և ոչ սաստիւ գայցեն յուղղութիւն, չարչարանօք հալածել»՝ կը յաւելու, «Զի թշնամանք ի թշնամանաց վրէժ առնուցուն, և խայտառակեսցի

երաւացի մահուամբ անիրաւ մահ հոգւոց»: Թէ ո՛վ էին այս բոլբորխտոնք՝ չենք գիտեր. թերևս էին Գնոստիկեան աղանդոյ երեք մնացորդք: Զարմանալի է սակայն վճիռ մեր քրիստոնեայ վարդապետին, որ, հինգերորդ դարուն քրիստոնէութեան խակ ոգւով, օրինաւոր կը դատէ՝ քան զմեզ տարբեր խորհողներն ի կրօնականս՝ հալածել աշխարհական բազկաւ, և հալածել ցմահ: Գալով քաղաքական յանցաւորաց, մորթել (մորթը հանել) զայսպիսիս կենդանւոյն՝ էր Պարսից սովորութիւն, զաչս խարել՝ Պարսից և Յունաց, մանաւանդ առ Բուզանդեան կայսերօք, ինչպէս նաև զկին և զորդիս փողոտել առաջի աչաց հօրն: Ապստամբներն տնովին ջնջել էր սակայն սովորական առ Հայս: Մերթ արուները միայն կը սպանուէին, և մերթ արու և էգ միանգամայն: Այսպէս Մանաւազեանց և Որդունեաց համար ասէ Բուզանդ, թէ Վաչէ սպարապետ Խոսրովու «հարկանէր վանէր զազգսն երկոսեան, և ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի» (Բուզ. Գ. Դ.). իսկ Բզնունեաց տոհմը, նոյնպէս առ Խոսրովաւ, կոտորեցաւ ազգովին. «Ի նաւ ելեալ Վաչէ սպարապետն, անցեալ ի կղզին (Աղթամար)՝ առհասարակ ոչ զէգ թողոյր և ոչ զարու» (Բուզ. Գ. Ը.): Նոյն անգթութիւնը գործուեցաւ Արծրունեաց և Ռշտունեաց, որ, ըստ Բուզանդայ, կոտորեցան ի քսութենէ Հայր մարդպետին առ Տիրանաւ. «Բառնայրին ի միջոյ (զազգսն), ասէ Բուզանդ, առանց ամենայն վնասու և յանցման, մինչ անգամ և զէգսն կոտորեցին զազգացն» (Բուզ. Դ. ԺԲ.): Ինչպէս նաև Արշակ, ըստ նմին Բուզանդայ, «զտոհմս Կամսարականացն առնէր ազգատ» (Դ. ԺԹ.): Մի անգամ միայն կը յիշուի զորդիս փողոտել առաջի յանցաւոր համարուած հօր: Այսպէս արար Մանուէլ Բատայ Սահառունւոյ, որ քսութեամբ սպաննել տուած էր զՄուշեղ, զեղբայր Մանուէլի. «Եւ զԲատն, արքային Վարազդատայ զքսուն, զսպանողն Մուշեղի, կալան իւր որդւովն առաջի սպարապետին Մանուէլի… և մեծաւ դատաստանօք դատեցաւ զանօրէնն Բատ սպարապետն Մանուէլ. նախ յանդիման նմա հրամայէր փողոտել զորդին նորա, ապա յետոյ զնա գլխատել» (Բուզ. Լէ.): Բայց այս էր գործ անձնական վրէժխնդրութեան Մանուէլի: Մորթել, որպէս ասացաք, էր սովորութիւն Պարսից, որպէս ասէ Բուզանդ զՇապհոյ, թէ «ըստ Պարսկի օրինակին հրամայէր զմորթն ի բաց հանել, և խոտով լնուլ և ի հրապարակի իւրում ի տեսիլ ծանականաց կանգնել հրամայէր» (Բուզ. Գ. ԻԳ.): Արդարև Բուզանդ կը պատմէ ուրեք, թէ Մուշեղ յետ վանելոյ զՊարսիկս ի գալստեան՝ Պապայ ի Հայս՝ կը խորովէր զմազդեզունս, և Պարսիկներէն շատերը մորթելով կը կանգնէր պարիսպներու վրայ. բայց զայս կը գործէր Մուշեղ ընդ հենգն կրակա-

*պաշտութեան և ի վրէժ հօր իւրոյ Վասակայ, զոր Շապուհ սպանած էր մորթազերծ մահուամբ. «Իսկ Մուշեղ զօրավարն Հայաստանեայց շրջէր ընդ երկիրն և աւերէր զտորուշանս մազդեզանցն, իսկ զմազդեզունսն որ մի անգամ ի բուռն անկան՝ զամենեսեան տայր հրաման սպարապետն Մուշեղ ունել և հրով խորովել, և զքազում պատուաւոր տեարս որ պատուականք էին առաջի թագաւորին Պարսից՝ ունէր ձերբակալս, և տայր մորթել և լնուլ խոտով և կանգնել ի վերայ պարսպացն»։ «Ընդ բազում տեղիս, կը յաւելու Բուզանդ, զայս առնէր (Մուշեղ) ի վրէժս հօրն իւրոյ Վասակայ» (Բուզ. Ե. Ա.)։ Անսովոր, միանգամայն անագորոյն պատժոյ օրինակ ունինք ի սպանման Երուազայ քրմապետի, եղբօր Երուանդայ, զոր սպան Սմբատ, սպարապետ Արտաշիսի, կապելով երկանաքար ընդ պարանոցն և ընկենլով ի գրգանս Ախուրեան գետոյ. «Զկնի այսորիկ հրաման տայ (Արտաշէս) Սմբատայ երթալ յամուրն Բագարան, որ հուպ ի քաղաքն Երուանդայ ի վերայ Ախուրեան գետոյ, զի սպանցէ զԵրուազ եղբայր Երուանդայ. զոր կալեալ Սմբատայ՝ երկան զուլանէ հրամայէ կապել, և ընկենուլ ի պտոյտ մի գետոյն» (Խոր. Բ. ԽԲ.)։ Քան զայս անագորոյն էր օրինակ սպանման Հայր մարդպետին, որ չարաչար թշնամանած էր զՓառանձեմ տիկին, զմայրն Պապայ ի բերդին Արտագերից. «Ապա պատմեցաւ թագաւորին Պապայ յաղագս օրերացն զոր եդ Հայր մարդպետն տիկնոջն Փառանձեմայ, մօր թագաւորին Պապայ, թշնամանս ձաղանաց ի բերդարգել պաշարմանն. զի իբրև զբոզ մի՝ այնպէս թշնամանեաց զնա ի ժամանակի իբրև եմուտ անդր գաղտուկ, և եդ անարգանս տիկնոջն, և եկն ել անտի և փախեաւ. ետուն զայս ամենայն զրոյց թագաւորին։ Ապա մինչ գեռ մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբ շրջէր յերկրին Տարօնոյ, և Մուշեղ սպարապետն Հայոց էր ի նմին գաւառի յիւրում բերդին որում Ողական կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ՝ եկն եհաս մի դեսպան յարքայէն Պապայ առ զօրավարն Հայոց Մուշեղ. և ունէր առ նա հրովարտակ, և գրեալ էր ի հրովարտակի անդր հրաման առ նա, զի չարամահ սատակեսցէ զՀայր մարդպետն։ Եւ նա զայս հրամանս ընկալեալ ի ձեռն առնոյր. յղէր առ մարդպետն Հայր դաւով, և մեծարանաց պատճառանաւ առ ինքն կոչէր յՈղականն. և էին աւուրք ձմերայնոյ, և սաստկացեալ կցեալ էր գետն Եփրատ։ Ապա կոչեալ եղև առ նա Հայր մարդպետն իբրև ի պատիւ մեծարանաց. եկն եմուտ ի բերդն յՈղական։ Ետ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն՝ ունել զնա, և մերկանալ իբրև ի մօրէ, և կապել զձեռս նորա ի ներքոյ ծնկաց նորա, և իջուցանել զնա ի գետն, և դնել ի վերայ սառինն կցելոյ գետոյն. և սատակեցաւ ան-*

գէն։ Եւ եղև ի վաղիւ անդր չոգան տեսին, զի ուղիղ գլխոյն իցրտոյն վայրեալ է բաց իջեալ թափեալ էր ընդ քիթս նորա» (Բուզ. Ե. Գ.)։ Որպէս տեսցաք սակայն՝ այսպիսի օրինակք անօսր են ի պատմութեան մերում։

Ց. Այսչափ միայն գիտենք դատական վարչութեան վրայ առհասարակ։ Չէ պարտ մոռանալ սակայն, թէ յետ դարձին Հայոց ի քրիստոնէութիւն, երբ քրիստոնէականն սկսաւ փոխանակել հեթանոսականը՝ եկեղեցին, յոյր ձեռն կը կատարուէր այս փոփոխութիւնն՝ ունեցաւ հզօր ազդեցութիւն վարչութեան մանաւանդ այս ճիւղին մէջ։ Գիրքը և ժողովոց կանոնք եղան ոչ միայն հիմն երկրին օրէնսդրութեան, այլ և նոյն իսկ օրէնսդրութիւնն։ Այս է պատճառ որ չունինք ի նախնեաց մնացած դատաստանագիրք։ Այս անուամբ գրուած մի ԺԲ. դարէն յանուն Մխիթարայ Գօշի՝ ոչ այլ ինչ է եթէ ոչ մեծաւ մասամբ քաղուած սահմանադրութեանց Գրոյն, առաքելական կանոնաց և եկեղեցական ժողովոց, և չարժեր իսկ դատաստանագիր (code) անուան։ Առ քրիստոնէութեամբ, երկրին օրէնքն էր, ինչպէս երբեմն յԵւրոպա՝ կանոնական իրաւունք (droit canon), և կանոնագիրքն էր դատաստանագիրք։ Շատ հաւանական է, թէ տունք երիցանց էին դատարանք, և գերագոյն ատեան՝ եպիսկոպոսարանք։ Չէ ստուգիւ յայտ, հաւանական կը թուի սակայն, թէ եկեղեցին, գէթ անուղղակի, ունէր նաև պատժական իշխանութիւն, այսինքն՝ թելադրութեամբ նորա կը տրուէին պատիժք։ Կոստանդնուպոլսոյ Հայ պատրիարքաց դատարանական իշխանութիւնն, ոչ քաղաքայինն միայն այլև պատժականն, որ տրուած էր նոցա իբրև առանձնաշնորհութիւն Օսմանեան կայսերաց կողմանէ՝ համարելի է ոչ այնչափ նոր արտօնութիւն, որչափ ի վաղուց վայելեալ իրաւանց ճանաչումն։ Ամուսնութեան և եկեղեցական կարգաց պահպանութեան խնդիրներ ոչ միայն դատել, այլև անոնց եղծումը զսպել խիստ միջոցներով՝ էր թոյլ տրուած, մանաւանդ թէ ճանչցուած կառավարութենէ։ Անրով (չուչէօվ) պատրիարքարան տարուիլ, նաև գան ըմպել կամ բանտարկուիլ ստահակելոց և հեստելոց ընդդէմ պատուիրանաց եկեղեցւոյ, ինչպէս պահոց՝ չէր անսովոր իբր կէս դար կամ աւելի յառաջ։ Դատուիլ եկեղեցական օրինօք և քրիստոնեայ դատաւորէ՝ էր առ նախնիս մեր իբրև հաւատոյ մասն, մինչև սմին հակառակ որ և իցէ կարգադրութեան համարուիլ «աղաւաղումն փառաց եկեղեցւոյ»։ Այսպէս, ըստ Եղիշէի, Սասանեանց դէմ յառաջ բերուած գանգատանաց պատճառներէն մին և գլխաւորը (դանգատներ, որ առիթ տուին աղետալի պատերազմին Վարդանանց) էր առաքումն ի Հայս պարսիկ դատաւորի, որ պիտի դատէր հարկաւ պարսիկ և ոչ քրիստոնէական

օրինօք. «Եւս չարագոյն հինգերորդն (այսինքն՝ հինգերորդ պատճառ գանգատանաց), քանզի որ հազարապետն էր աշխարհին՝ իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականացն եւ քրիստոնէիցն. գրգռեաց յարոյց (Վասակ) զամբաստանութիւն ի վերայ նորա, եւ հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկած յաշխարհն, եւ միւս եւս մոգպետ (օրէնսգէտ պարսիկ) դատաւոր աշխարհին, զի զեկեղեցւոյ զփառսն աղաւաղեսցեն» (Եղիշ. էջ 39, 40)։

7. Որովհետեւ յիշեցինք հոս հազարապետը, որ էր գլխաւոր «գործակալ», այսինքն պաշտօնեայ,—քանզի այս մօք կ՚առնուի առ նախնիս մեր «գործակալ» բառն, իբրեւ յանուն թագաւորին գործող՝—ի դէպ է խօսել զպաշտօնէութենէ, այսինքն թէ ինչ պաշտօններ կային, որ կը կատարուէին առ Արշակունեօք յանուն թագաւորին՝ մասնաւոր գործակալաց ձեռօք։ Բուզանդ ունի պաշտօնէութեան վրայ մասնաւոր գլուխ մի, որոյ բովանդակութիւնն այս է։ Ըստ Բուզանդայ երկու էին գլխաւոր պաշտօնէութիւնք, զորս կը կոչէ «սկիզբն գործակալութեան», այսինքն իբրեւ գլուխ գրեթէ այլոցն ամենեցուն. առաջին՝ հազարապետութիւնն յազգին Գնունեաց, եւ երկրորդ սորատեղատութիւնն, այն է սպարապետութիւնն՝ յազգին Մամիկոնենից. «Եւ նորոգեցաւ զուարթացաւ տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին (ի սկզբան թագաւորութեանն Արշակայ) որպէս եւ զառաջինսն. մեծամեծքն յիւրաքանչիւր գահու, եւ գործակալքն յիւրաքանչիւր չափու. եւ սկիզբն գործակալութեանն (էր) հազարապետութիւնն յազգին Գնունեաց, եւ սորատեղատութիւնն, (այն է) սպարապետութեան զօրավարութիւնն... ի բուն ի նախնեացն կարգաց ի Մամիկոնեան ազգին»։ Ըստ Բուզանդայ քան զսոսա խոնարհագոյն կային ուրիշ գործակալներ. «Ցայսմ ազգաց եւ ի խոնարհ (էին) որ (կրէին) գործակալն անուն»։ Բայց թէ ինչ էր պաշտօն սոցա՝ չյիշեր Բուզանդ։ Նա մանաւանդ, ըստ նմին Բուզանդայ, մեծամեծ նահապետք եւ տանուտեարք (ցեղերու գլխաւորք) եւս էին գործակալք, բայց գործակալք առանց մասնաւոր պաշտաման. «Թող զնահապետս մեծամեծս եւ զտանուտեարս, որ գործակալք ձոյն էին»։ Ասոնց ամենուն թիւը կը հանէ Բուզանդ մինչեւ ինն հարիւր. «Ինն հարիւր բարձ, որ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեան բազմակալացն կարգելոց». կամի ասել՝ ունէին արտօնութիւն բազմելոյ ի սեղան թագաւորին։ (Տաճար, ըստ լեզուի նախնեաց, կը նշանակէ նաեւ սեղան, ինչպէս Ուրախութիւն ունի երբեմն խրախութեան, կոչնոյ նշանակութիւն)։ Այս ամենայն գործակալք կամ պաշտօնեայք ունէին նաեւ զսպասաւորս իրեանց, ուստի կը յաւելու Բուզանդ, «Թող զտնկայս գործակալութեանն սպասու» (Բուզ.

Դ. Բ.)։ Այս շքեղ նկարագիր, զոր կու տայ մեզ Բուզանդ՝ է արդարև ճշգրիտ պատկեր արևելեան արքունեաց, զորոց խօսած են հին յոյն պատմիչներէն ոմանք։

Բուզանդ, ինչպէս տեսանք՝ կը յիշէ երկու գլխաւոր պաշտօն կամ գործակալութիւն յանուանէ, Հազարապետութիւնն և սպարապետութիւն։ Սպարապետութիւնն, ինչպէս յայտնի է՝ էր հրամանատարութիւն բովանդակ զօրուն, կամ, ինչպէս կը սահմանէ Բուզանդ՝ «իշխանութիւն բովանդակ ի վերայ ամենայն զօրաց բազմութեան Հայոց մեծաց»։ Գալով Հազարապետութեան՝ այս գործակալութեան պաշտօնն էր, ըստ նկարագրին Բուզանդայ, «աշխարհատես խնամակալութիւն», այսինքն՝ տեսչութիւն ներքին գործոց, և «աշխարհաշէն աշխարհատած դեհկանութիւն», այսինքն՝ երկրի մշակութեան վրայ հսկողութիւն, որ գլխաւոր պաշտօն էր առ Պարսիկս. քանզի Դեհկանութիւն պարսիկ լեզուաւ ունի հայերէն գեղականութեան կամ շինականութեան իմաստ, ուստի և Բուզանդ կ'անուանէ «շինականաշէն» զազգն Գնունեաց, որոց յանձն էր այս պաշտօն գէթ յայնժամ։ Վարդանանց ժամանակի հազարապետն, որ ըստ Խորենացւոյն կը թուի լեալ Վահան Ամատունի՝— «բայց յաղթեաց (ի թագման մարմնոյն Մեսրոպայ) քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութեամբ (իշխանութեամբ) մարմնաւորաւ, վասն զի ի ժամանակին յայնմիկ ի նա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն Հայոց աշխարհիս» (Խոր. Գ. Կէ.)՝— գովութեամբ կը յիշուի նաև յԵղիշէէ, իբրև հայր և վերակացու աշխարհին, և որոյ անկումն ի պաշտօնէն էր ըստ նոյն Եղիշէի մին ի գլխաւոր պատճառաց գանգատանաց Հայոց ընդդէմ Պարսից, ինչպէս տեսանք վերագոյնն. «Եւս չարագոյն հինգերորդն (հինգերորդ պատճառ գանգատանաց), քանզի որ հազարապետն էր աշխարհին՝ իբրև զհայր վերակացու համարեալ էր աշխարհականացն և քրիստոնէիցն. գրգռեաց յարոյց (Վասակ) զամբաստանութիւն ի վերայ նորա, և հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն» (Եղիշ. էջ. 39, 40)։

Առ Ագաթանգեղոսի կը յիշուին ուրիշ երեք գործակալք իշխանանուամբ, «իշխանն մարդպետութեան իշխանութեանն», «իշխանն թագակապ ասպետութեանն իշխանութեան», և «իշխանն մաղխազութեան տանն», որոց յանձն էին մասնաւոր պաշտօններ, որ կը վերաբերէին թագաւորին անձին և տան։ Մարդպետութիւնն էր, ինչպէս յայտնի է՝ ներքինապետութիւնն, որ նշանաւոր պաշտօն կամ պատիւ էր ոչ առ Պարսիկս միայն, այլ և առ Յոյնս, մանաւանդ առ Բուզանդեան կայսերօք։ Մարդպետք, որ «հայրն անուանեալ

էին թագաւորին» (Բուզ. Ե. Զ.), և զորոց պաշտօնը կ'անուանէ ուրեք Բուզանդ «Հայրութիւն»—«Եւ ի նորա տեղի հայրութեան մարդպետութեանն (կացուցանէր Պապ) զԴկղակ ումն» (Բուզ. Ե. Գ.)՝ — ունէին ազդեցութիւն մեծ առ թագաւորին, մինչև գանգատել զնոցանէ Բուզանդայ բազմիցս, կոչելով զնոսա «չարասիրտ, չարախորհուրդ, չարագործ» (Բուզ. Գ. ԺԸ.), «այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անիրաւ» (Դ. ԺԴ.), կը վարէին արքունի կալուածոց վեկացութիւնը (տես էջ 7), և ունէին համարձակ մուտ ի կանանոցն (Բուզ. Ե. Գ.)։ Մարդպետութիւնն տևեց նաև յետ դարձին Հայոց ի քրիստոնէութիւն, որպէս ասացաք, ըստ դայթակղական օրինակի Բուզանդեան կայսերաց, Թէոդոսներու և Արկադներու անգամ։ Փարպեցին կը յիշէ Միհրշապուհ անուն մարդպետ ի համարի ուխտապահ նախարարաց միաբանելոց ընդ Վարդանայ (Փարպ. ԼԹ.). այլ կը խզուէին արդեօք ստքա, թէ լոկ իբր սովորական անուն պաշտօնի կը պահէին մարդպետ անունը՝ չէ յայտ։

Ասպետութիւնն էր մասնաւոր իմն արտօնութիւն պսակելոյ զթագաւորն, ուստի և Ագաթանգեղոս ասպետ անուան վրայ, որ էր Բագրատունի իշխանաց բուն պատուանունն՝ կը յաւելու նաև «թագադիր» բառը—«Եւ զթագադիր ասպետն» (Ագաթ. ԾԻԶ.)։ Այս պաշտօնն, ի վեր քան զայլ պաշտամունս՝ կապուած էր Բագրատունի ցեղին կրկին տիտղոսով, «ասպետ» և «թագադիր» կամ «թագակապ»։ Թագաւորին մասնաւոր ցեղէ մը պսակուելու սովորութիւնը, զոր ունէին նաև Պարսիկք՝ կը թուի ունել հեթանոսական ինչ ծագումն (տես Ա. մասն, էջ 180), և ունէր ոչ կրօնական միայն, այլև քաղաքական նշանակութիւն, մինչև Խորենացւոյն Երուանդայ չպսակուելն թագադիր ասպետէ՝ համարել արատ. «Ի մեռանելն Սանատրկոյ՝ միաբանեալ (նախարարաց) թագաւորեցուցին զնա (զԵրուանդ) առանց արանց յազգէն Բագրատունեաց լինել թագադիր (Խոր. Բ. Լէ.)։ Նաև Բուզանդ գիտէ Բագրատունեաց այս պաշտօնը, և ի վաղուց կը համարի ունել նոցա այն արտօնութիւնը, յիշելով զնոսա ուրեք այն երկու, «թագադիր և ասպետ» տիտղոսներով, մանաւանդ վերջնովն. «ԶԲագարատ մեծ իշխանն ասպետութեան... կազմեցին արձակեցին» (Բուզ. Դ. Դ.) և այլուր (Ե. ԽԴ.)— «Տայր (Մանուէլ) նմա (Վաղարշակայ) զդուստր ասպետին Բագրատունեաց ի Սպեր գաւառէ, որ թագադիրքն թագակապքն լեալ էին ի բնմէ ազգին թագաւորութեանն արշակունեաց»։ Յետ դարձին ի քրիստոնէութիւն կը թուի դադրած այս սովորութիւն։ Վերջին պսակեալ գլուխ թագադիր ասպետէ եղաւ Աշխէն, կին Տրդատայ, «Եկեալ Տրդատայ յաշխարհն՝ առաքէ զՍմբատ ասպետ, զհայր Բագարատայ,

ածել զկոյսն Աշխէն, դուստր Աշխադարայ, իւր ի կնութիւն... և հրամայէ գրել զնա Արշակունի, և զգեցուցանել ծիրանիս և թագ կապել զի հարսնացի արքայի» (Խոր. Բ. ՁԳ.)։ Այսպէս թագադիր տիտղոսն յետ այնորիկ դուն ուրեք կը տրուի Բագրատունեաց, իսկ ասպետ՝ միշտ, այնպէս որ առ Փարպեցւոյն գրեթէ չկայ յիշուած Բագրատունի իշխան առանց ասպետ անուան։

Ց. Որպէս աւագանին և ընթերակայք, որ էին գրեթէ միշտ մօտ, շուրջ բոլորեալ զթագաւորաւն, մանաւանդ ի ժամ ճաշու և ուրախութեան (Բուզ. Դ. Բ.)՝ նոյնպէս հանդերձանք թագաւորին և սպասաւորացն և ամենայն սպասք տան և սեղանոյ էին արդարև հոյակապ և վայելուչ ըստ արևելեան շքեղութեան։ Ոսկի և արծաթ, ականք պատուականք և մարգարիտ էին սովորական նիւթք զարդուց։ Ծիրանի և թագ գլխաւոր զարդք էին թագաւորաց։ Խորենացին, ինչպէս արդ իսկ յիշուեցաւ՝ ասէ զՏրդատայ, թէ յառնուլն կին զԱշխէն՝ հրամայեց սպարապետին իւրում Սմբատայ Բագրատունւոյ թագ կապել նմա և զգեցուցանել ծիրանիս ի նշան տիկնութեան։ Բայց թագաւորական հանդերձի և զարդուց փառաւոր նկարագիրն ունինք դարձեալ առ Բուզանդայ։ Յետ մերժելոյն Վարազդատայ ի ձեռն Մանուէլի, Պարսից թագաւորն առ որ դիմած էին Հայք՝ թագաւորեցուց զերկուս որդիս Պապայ զԱրշակ և զՎաղարշակ, յղելով նոցա և մօր նոցա Զարմանդխտոյ, ինչպէս նաև սպարապետին Մանուէլի, յորոյ ձեռն եղած էր այն մերձաւորութիւն՝ թագաւորական պատմուճան և զարդ, զոր Բուզանդ կը նկարագրէ այսպէս. «Եւ ետ թագաւորն Պարսից տանել թագ և պատմուճան և զվառ թագաւորացն տիկնոջն Զարմանդխտոյ, և թագս մանկանցն երկոցունց Արշակայ և Վաղարշակայ։ Եւ սպարապետին Մանուէլի նոյնպէս ետ տանել զթագաւորական պատմուճանն, սամոյր մի և զգլխոյ պատիւ գարգմանակ ոսկի արծաթ, և ի վերայ գագաթանն ի թիկանց արծուոյն հանգոյց թագի, և լանջաց պատիւ ապիզակ, որպէս օրէնք են ունել թագաւորաց, և շիկակարմիր խորան, և ի վերայ խորանին արծուի նշան, և սրահակս մեծամեծս, և կապուտակ երկնագոյն հովանոցս, և ոսկի սպաս տաճարին (սեղանոյ) առաքէր սպարապետին Մանուէլի» (Բուզ. Ե. ԼԸ.)։ Սամոյր, ինչպէս նաև կարմիր կօշիկ զգենուլ թագաւորաց՝ յայտնի է նաև այլուստ։ Երբ Ներսէս մտաւ առ Արշակ միջնորդել Գնելոյ համար՝ թագաւորը ծածկեց գլուխը սամուրիւն, ասէ Բուզանդ, որպէս զի չլսէր Ներսիսի բարեխօսութիւնը. «Իսկ թագաւորն իբրև տեսանէր զմեծ քահանայապետն, գիտացեալ զբարեխօսութիւն համօզելոյն վասն առնն մահուանն զի մի մեռցի՝ զիւր սամոյրսն զգլխովն

ածեալ, զիւր դէմս երեսացն ծածկէր, քնոյ պատճառ եղեալ, ղի զնորա բանսն մի լուիցէ» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Սամոյր կը թուի թէ էր յայնժամ մեծագին զարդ, զգենուլ զայն չէր սակայն թագաւորաց միայն յատուկ. Վասակայ փառաւոր զարդարանաց հետ կը յիշուի նաև սամոյր (Եղիշ. էջ 241)։ Բուզանդ զՁաւինայ ումեմնէ անարժան և պճնասէր եպիսկոպոսէ Մանազկերտոյ կը պատմէ, թէ «աթինեալս և զասպակեալս, զժապաւինեալս նարօտօք ագանէր, զսամուրենիս և զկնգմենիս և զգայլենիս ագանէր, և աղուեսենիս զանձամբ արկեալ անխտիր ի բեմ ելեալ նստէր» (Բուզ. Զ. Բ.). Ինչպէս կարմիր կօշիկ՝ նոյնպէս ոսկի սպաս յատուկ էր թագաւորաց. այլք չունէին իշխանութիւն վարել այնպիսեօք, բայց եթէ առանձինն հրամանաւ թագաւորին իբրև նշան մեծ պատուոյ և աւագութեան։ Այսպէս, ըստ Խորենացւոյն, Արգամայ նահապետին Մուրացանաց տրուեցաւ իշխանութիւն, իբրև երկրորդ թագաւորին՝ ագանել կօշիկ կամիր միոյ ոտին, և ըմպել ոսկի բաժակէ. «Տայ (Արտաշէս) և ռանն քաջի և պատուականի Արգամայ՝ զգահն երկրորդական, և պսակ յակնթակապ և գինդ յերկոսին ականջսն, և կարմիր զգեստ միոյ ոտինն, տարգալ ունել ոսկի և պատառաքաղ, և ոսկեղինօք ըմպել նուագօք» (Խոր. Բ. ԽԷ.)։ Պապ ունէր ոսկի բաժակ ի ձեռին, երբ հարին զնա ի բազմականին. «Եւ մինչդեռ Պապ ունէր զուրախութեան գինին ի մատունս իւր և նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ի մատունս իւր՝ հրաման լինէր հարկանել զնա» (Բուզ. Ե. ԼԲ.)։ Ոչինչ ընդհատ շքեղ էին հանդերձք և զարդք պաշտօնէից և սպասաւորաց, մանաւանդ մինչ էին առ թագաւորին։ Այսպէս Խորենացին ասէ զԹագադիր ասպետէն, թէ ունէր իշխանութիւն «առանց ոսկւոյ և ականց զկրտսեր մարգարիտն երեքտակէն վարսակալ ածել՝ յորժամ յարքունիս ի տան թագաւորին շրջիցի» (Խոր. Բ. Է.). Նկարագիր մութ. թերևս կամի ասել, թէ Թագադիր ասպետն ունէր իշխանութիւն ածել ի գլուխ իւր ապարօշ երեք կարգ մարգարտէ։ Մարգարիտն այնպէս առատ էր՝ մինչև ի հարսանիս թագաւորաց սփռել մարգարիտ ի տան հարսին, ինչպէս ոսկի դահեկան՝ ի տան թագաւորին։ Խորենացին ի վկայութիւն այս սովորութեան կը բերէ Հայոց վիպասանաց սա գեղեցիկ երգն զհարսանեաց Արտաշիսի. «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկան». «քանզի սովորութիւն իսկ էր, կը յաւելու Խորենացին, թագաւորացն մերոց փեսայութեամբ ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել իբրև զհիւպատեանն Հռոմայեցւոց. սապէս և թագուհեացն յառա-

գաստին՝ մարգարիտ» (Խոր, Բ. Ծ.)։ Ձներսխէ մեծէ, մինչդեռ սե-
նեկապետ էր նա Արշակայ յառաջ քան զկաթողիկոսութիւնն՝ ասէ
Բուզանդ, թէ «կայր ի սպասու թագաւորին ի սնարս նորա, զար-
քունական սուսերն, զպողովատիկն զոսկեպատեանն հանդերձ ակա-
նակապ մարգարտազարդ կամարաւն ի սպասու նորա բարձեալ ու-
նէր» (Բուզ. Դ. Գ.)։ Պատշաճ հանդերձիւ և զարդու երթալ ի խըն-
ջոյս կամ ի հարսանիս այնպէս սովորական էր, ինչպէս զարդիս,
նոյնպէս ի հնումն, մինչև Տէրն մեր կը յանդիմանէ զայն որ առանց
հանդերձի հարսանեաց եկած էր ի հարսանիս. «Ընկեր, զիա՞րդ մտեր
այսր, զի ոչ ունէիր հանդերձ հարսանեաց. և նա, ասէ, պապանձե-
ցաւ»։ Արդարև արդար յանդիմանութիւն, բայց պատուհասն չեղաւ
ըստ ոգւոյ Աւետարանին, քանզի կը յաւելու աւետարանիչն, «Յայն-
ժամ ասէ թագաւորն ցսպասաւորսն, կապեցէք զգորա զոտս և զձեռս,
և հանէք զդա ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և կրճել ատա-
մանց» (Մատթ. ԻԲ. 12, 13)։

Արտաքին հանդերձք ժամանակին, մանաւանդ մեծամեծաց,
էին գրատ, այսինքն պարեգօտ կարճ, յորոյ վերայ կու գային վար-
տիքն, և գօտի զմիջով, զորմէ կախէր նրանն, որ կը թուի լինիլ սու-
սեր կարճ, և մոյկ յոտս։ Այսպէս կը նկարագրէ Բուզանդ զԴղակ
մարդպետ. «Ի ժամ ընթրեացն հրաման ետ արքայն Պապ տանել
պատմուճան ագուցանել մարդպետին Դղակայ, և ագուցին նմա
դրատս և վարտիս և մոյկս։ Եւ էած զգօտին ընդ մէջ իւր զորմէ
թուրն կախէր, և սուսեր ընդ մէջ ածեալ, և խորշ ի գօտւոյ
դրատիցն իջեալ զթուրն և զսուսերն ծածկէր» (Բուզ. Ե. Զ.)։ Նաև
անտէրնչութեան ժամանակ, այն է զկնի բարձման թագաւորու-
թեան, նախարարք ունէին իրենց պատուոյն իսկական և վայելուչ
ձեւը։ Եղիշէ Վասակայ զարդը կը նկարագրէ այսպէս. «Ըստ օրինացն
աբքունի արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր ի թագաւո-
րէն. կապէր և զպատիւ վարսին, և զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ,
և զկռանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով և ակամբք
պատուականօք ընդ մէջ իւր ածէր, և զգինդսն յականջսն, և զգու-
մարտակն ի պարանոցին, զսամոյրսն զթիկամբն, և զամենայն օրէնս
պատուոյն զանձամբ արկեալ երթայր յարքունիս» (Եղ. էջ 241)։

Նաև երիվարք կ'երևի թէ էին վառեալ զարդու, որոյ վասն
ունի հայերէնն պարսկահայ բառն «ասպազէն»։ Բուզանդ գեղեցիկ
կը նկարագրէ զՄանուէլ վառեալ զինու հանդերձ երիվարաւն. «Իբ-
րև զաչս ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ, և տեսանէր զսպա-
րապետն Մանուէլ, ի մեծութենէն հասակին և ի շքեղութենէ ան-
ձինն, և յամրակուռ յերկաթապատ յոտից մինչև ցգլուխն առհա-

սարակ յանվթար զինէն, ի հաստամեստ յանձնէն և ի հաստատուն երիվարէն և յասպազէն վառելոյն յանշարժ սպառազինէն՝ համարեցաւ կշռեաց ի միտս իւր իբրև զլեառն մի բարձր զանմատոյց» (Բուզ. Ե. Լէ.)։

**9.** Չիք գրեթէ ամենևին յիշատակութիւն կառաց, զորս վարել արդարև դժուարին էր յանպխսում անհարթ երկրի, լի խորաձորովք, լերամբք և լեռնակօք, անթիւ գետերով և գետակներով։ Եւ Բուզանդայ կը յիշուի միայն ժանու կամ ժանաւար, իբրև ազգ ինչ դեսպակի, որ հաւանականապէս կը՛ տարուէր ձիովք կամ ջորւովք, գլխաւորապէս կանանց համար։ Այսպէս զՓառանձեմայ ասէ Բուզանդ, թէ եկած էր ի բանակն ժանուաւ ընդ առն իւրում Գնելայ, զոր Արշակ բերել տուաւ դաւով. «Եւ մինչդեռ գայր նա (Գնէլ) ընդ բանակամէջն, և էր հեծեալ յերիվարին իւրում... և կին նորա որ եկեալ էր ընդ նմա ժանուաւ՝ ի նմին վաշտու էր ընդ առն իւրում» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Եւ զՄուշեղէ ասէ նոյն Բուզանդ, թէ զկանայս Շապհոյ զորս բռնած էր դերի՝ արձակեց ժանուարաւ. «Բայց զկանայս Շապհոյ թագաւորին Պարսից, (և զտիկնաց տիկինն զորս ըմբռնեալ էր) ոչ ումեք ինչ թողլ տայր Մուշեղ զօրավարն Հայոց անարգել ինչ, այլ ժանուարս տայր նոցա կազմել ամենեցուն, և հանեալ արձակէր զամենեսեան զհետ առն նոցա Շապհոյ արքայի» (Բուզ. Ե. Բ.)։

**10.** Վարչութեան քան ուրիշ մասերն աւելի կանոնաւոր էր զինուորականն։ Ոչ միայն Արշակունիք, այն է տիրող ցեղն ունէր զիւր առանձին զօրն, որ կը կոչուէր «արքունի զօրք», այլ և իւրաքանչիւր նախարար ունէր զիւր գունդ։ Այսպէս մարթ է ասել, թէ բոլոր երկիրն էր մեծ իմն զինուորական սատրապութիւն, մանր մանր ցեղապետութեանց բաժնուած, որոց իւրաքանչիւրն թէպէտ ունէր զիւր առանձին գունդ՝ գլխաւոր զօրութիւնն սակայն էր արքունական բանակին, զոր կու գային զօրացունել ի հարկին նախարարակոյտ զօրքն, այսինքն այլև այլ նախարարք իրենց գունդերով, որոց ամենուն ամբողջութիւնը կը կոչէ Բուզանդ «Գումարտակ», որ կը յանձնուէր ընդհանրապէս սպարապետին։ Գէթ այսպէս կ՚ընծայեցունէ Բուզանդ։ «Վստահ էր, ասէ, (Խոսրով) ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն, ի զօրավարն Հայոց մեծաց, և ի քաջն Վահան Ամատունի։ Գումարէր զզօրսն ամենայն տանցն աւագանւոյն ընդ զօրսն արքունի, և տայր զգումարտակն ամենայն ի ձեռս նոցա» (Բուզ. Գ. Ը.)։ Եւ այլուր (Գ. ԺԱ.)—«Ապա ժողովէր սպարապետն, զօրավարն Հայոց մեծաց Վաչէ զազատախումբ բանակն նախարարակոյտ զօրօքն, և ելանէր տայր ընդ զօրսն Պարսից պատերազմ»։

Դարձեալ (Գ. Ի.)—«Ի ժամանակին յայնմիկ այնպէս դիպեցաւ, զի զօրավարքն չէին անդ, այլ սարտուցեալ էին, և այլ մեծամեծք նախարարացն և աւագ տանուտեարք ազատանին, սոյնպէս և զօրքն արքունի յիւրաքանչիւր տունս, յիւրաքանչիւր կայեանս, յիւրաքանչիւր դադարս դադարեալ էին»։ Բուզանդ այլ ուրեք կը կոչէ բոլոր Հայոց զօրքն «Արարատեան գունդ». (Բուզ. Դ. Ի.), ինչպէս թագաւորութիւնը կը կոչէ «Արարատեան տէրութիւն» (Գ. Ժ.). «Վարէր, զինէր, ժամակալ լինէր Վասակ, Այրարատեան գնդաւն եկանէր անկանէր ի վերայ բանակին (Յունաց)»։

Զենք գտնէր սակայն արդի ոճով որոշ բաժանումներ ի զօրուն։ Գունդ ստէպ կը գործածուի նշանակութեամբ բանակի կամ զօրաց իբրև այս ինչ ազգի։ Այսպէս յաճախ. «Իբրև մերձեցան գունդքն երկոքեան, Յունացն և Պարսիցն»։ «Հայաստան գնդին լինէր յաղթութիւնն»։ «Ապա յառաջ գայր և խնդրէր պարգև Ուռնայր ի Շապհոյ արքայէն Պարսից և ասէր, թէ Կամ լիցի քեզ, արանց քաջ, զի ինձ հրաման տացես, զի Հայոց գնդին Պապայ արքային ես ինձէն ելից իմով գնդաւս նահատակ, զի Արեաց գնդին պատեհ է դիպան ելանել զօրացն Յունաց. իսկ ես իմով գնդաւս Հայոց իշխանացն ելից»։ «Մուշեղ սպաս արարեալ դիպէր գնդին Աղուանից»։ Գունդ կը կոչուի նաև մասնաւոր ցեղի կամ զօրավարի զօրք. «Թողոյր (Մեհրուժան) զբանակն Պարսից, և ինքն զիւր գունդն առեալ գայր հասանէր ի Կոգ գաւառ»։ «Մինչդեռ նա (Ներսէս) զաղօթսն մատուցանէր՝ խաղայր ճակատեալ իբրև զհուր ամենայն զօրքն Հայոց ընդդէմ զօրացն Պարսից. իսկ գունդն Մուշեղեան յառաջեալ քան զայն գունդսն՝ յառաջամուխ տագնապեալ երթային» (Բուզ. Ե. Դ.)։ Վաշտ, որ դուն ուրեք կը գործածուի՝ կը նշանակէր փոքր գունդ։ Այսպէս Բուզանդ խօսելով զբազմութենէ զօրուն Մազքթաց՝ վաշտ կը դնէ զկնի բառին գունդ իբրև փոքր քան զայն. «Լինէր հանդէս ի նշանաւոր տեղիս, գնդի գնդի, վաշտուց վաշտուց» (Բուզ. Ե. Ե.)։ Նոյնպէս է առ Խորենացւոյն իբրև խումբ. «Շուրջ զգահոյիւքն (դիւական Արտաշիսի) նախ (երթային) որդիքն և բազմութիւն ազգականացն, և առ այսոքիւք պաշտօնէիցն զինուորութիւնք (զինուորական պաշտօնեայք), նահապետքն և նախարարութեանց գունդք (բազմութիւն նախարարաց), և միանգամայն զօրականացն վաշտք» (խումբք զօրաց) (Խոր. Բ. Կ.)։ Բայց վաշտ կը նշանակէ նաև որև իցէ փոքր խումբ կամ բազմութիւն։ Այսպէս զբազմութիւնն Գնելայ, որ դաւով հրաւիրուելով յԱրշակայ եկաւ ի բանակն իբրև յայցելութիւն և ոչ իբրև ի պատերազմ՝ Բուզանդ կը կոչէ վաշտ. «Իբրև առաւօտն ծագեաց՝ հասանէր վաշտն Գնելոյ ի բանակն արքունի»։

«Կին նորա որ եկեալ էր ընդ նմա ժանուաւ՝ ի նմին վաշտու էր ընդ առն իւրում» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Առ Խորենացւոյն ունինք այս բառին նուազականը, «վաշտկան», երբ փոքր վաշտ. «Սմբատայ գիշերոյն զհետ Երուանդայ եկեալ սակաւ վաշտկանաւ՝ զդուռն քաղաքին պահէր» (Խոր. Բ. ԽԶ.)։ Բայց այս ամենայն անուանք, ինչպէս արդէն ասացաւ՝ չեն ցուցներ, ըստ արդի զինուորական դրութեան, աստիճանաւոր բաժանումներ իւրաքանչիւր որոշ թուով, այլ կը ցուցնեն միայն մեծ կամ փոքր բազմութիւն զօրաց։

Հայոց զօրքն էր ընդհանրապէս այրուձի. հետեւակ դուն ուրեք կը յիշուի. և զայս կը պահանջէր արդարև երկրին երեսը, լեռնային և անհարթ, դժուարին հետեւակ զօրաց շարժման. մէով բանիւ բանակին բոլոր զօրութիւնն էր հեծելազօրն։ Բուզանդ յետ պատմելոյ, թէ Մերուժան խորհեցաւ առնուլ Մանուէլի բանակին ձիանը, և այնու ի բուռն արկանել զՄանուէլ հանդերձ իւրովքն՝ կը յաւելու, թէ բարեբախտութեամբ Մանուէլեանք որ անգէտ էին դաւին՝ յորս ելած էին զայն օր. «Եւ գայլին հասանէին լրտեսքն (Մերուժանայ), գիտեցին զերամակ ձիոց բանակին (թէ) յորում վայրի կային, և չոգան տարան զրոյց։ Եւ խորհեցաւ նա առնուլ զերամակ բանակին. այնմ ուշ առնէր, և խնդալից եղեալ ասէր պարծելով առաջի իւրոց զօրացն, թէ վաղիւ յայս ժամ իմ կալեալ կապեալ իցէ զՄանուէլն։.. Ապա սրտմտութեամբ մեծաւ զիւր դէտսն առաջի արկեալ յերամակական արշաւէր, զի հնար լիցի նմա նախ զայն ըմբռնել։ Եւ հասեալ ի տեղին՝ զերամակ ձիոցն ոչ գտանէր, վասն զի յԱստուծոյ այնպէս իմն եղև իրաւունք պատրաստութեան Հայոց գնդին, զի սպարապետին Մանուէլի ամենայն Հայոց գնդին տուեալ էր ժամ յորս երթալոյ. վասն այսորիկ դիպեցաւ, զի զամենայն երամակին ի շէն էր ածեալ, և նոքա դեռ որսոյ պատրաստեալ էին ի հեծանել» (Բուզ. Ե. ԽԳ.)։ Գալով կազմութեան և սպառազինութեան զօրուն՝ պատերազմող զօրքը (քանզի կար նաև սինլքոր մաս մի) կը բաժնուէր երկու, նիզակաւոր՝ որ մեծագոյն մասը կը կացուցանէր զօրուն, և սպարակիր։ Այսպէս ունինք առ Բուզանդայ. «Մուշեղ սպարապետն գումարեաց ի մի վայր զզօրսն ամենայն Հայոց, և էին կուռ վառեալք իննսուն հազարք ընտիրք նիզակ ի ձեռն, թող զսպարակիրս» (Բուզ. Ե. Է.)։ Սպարակիրք, որ և վահանաւորք, կը կոչուէին այսպէս, վասն զի ասպար էին գլխաւոր զէնք նոցա. իսկ նիզակաւորք, որ էին բուն կռուող մասն զօրուն՝ կը կրէին այս անունը, վասն զի մեծ մասին սոցա զէնքն էր նիզակ. կային նաև որ կը կրէին սուին, սուսեր, վաղր, սակր և աղեղն. իսկ զարդք ամենեցուն էին զրահ և սաղաւարտ, որոց միովն կը պաշտպանուէր

մարմինն, և միւսովն՝ գլուխն։ Այս նկարագիրն ունինք յաճախ ի Բուզանդայ. «Ապա հրաման տայր թագաւորն Արշակ Վասակայ, իւրում սպարապետին, գունդ գումարել, զօրս պատրաստել. և նա փաղփաղակի կատարէր զհրամանս թագաւորին. քառասուն հազար կուռ վառեալք, որ ընտիրքն և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստի նահատակութեանն, նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք անվրէպք կորովիք, վաղրաւորք, սակրաւորք, որք ոչ գիտէին զերկիւղ զանգիտելոյ յարանց ախոյենից, համակ հեծելազօրք, զրահաւոր պատենազէն, սաղաւարտաւորք» (Բուզ. Դ. Ի.). և այլուր ի պատմութեան Գնելայ (Դ. ԺԵ.). «Իբրև մերձ եղև (Գնէլ) ի հրապարակն արքունի՝ անդէն յարքունուստ հասանէին բազում սպասաւորք վառեալք. սուսերաւորք, նիզակաւորք, վաղրաւորք, սակրաւորք, սունաւորք և սպարակիրք հետևակք»։ Բայց ունէր բանակն նաև ոչ սակաւ թարմատար զօրք, գործով կամ պաշտօնիւ տարբեր մարտիկ կամ ճակատամուղ մասէն, ինչպէս կը յիշէ ուրեք Բուզանդ. «Ոչ ոք էր, ասէ, մնացեալ առ թագաւորին, ոչ գունդ և ոչ այրուձի, այլ (ինքն էր) միայն սակաւ սպասաւորօք հանդերձ, և ռահվիրայ մարդկաւն, և խառնաղանջ խորանապահ զօրուն և ռամիկսպաս զօրօքն» (Բուզ. Գ. Ի.)։

Մասնաւոր բանակատեղի, մանաւանդ արքունի զօրուն՝ էր Նահապիվան, իբրև սովորական զօրանոց. «Եւ էր բանակ թագաւորին ի Նահապիվանի, ի բուն բանակի տեղսն Արշակունեացն» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Նահապիվան կը թուի լեալ քաղաք զօրանիստ հանդերձ մօտակայ երկրաւն, ընդ իշխանութեամբ կամ վերակացութեամբ առանձին իշխանի, որ կը կոչուէր շահապ Նահապիվանի (Ագաթ. ԾԻԶ.)։

Արդի դրութեամբ զինուորական աստիճանք, ինչպէս հազարապետի, հարիւրապետի, յիսնապետի, տասնապետի՝ չկան երբէք յիշուած առ մեզ։ Գալով սպարապետութեան, թէպէտ միում ումեք միայն յանձն էր այս պաշտօն՝ կային սակայն զօրապետք կամ պետք զօրաց ընդ ձեռամբ սպարապետին, և ամենուն վրայ առաջին և գլխաւոր հրամանատար և իշխան էր թագաւորն, իբրև տէր երկրին բովանդակ զինուորական զօրութեան, և որ կարող էր տալ կամ բառնալ առնուլ որևիցէ զինուորական պաշտօն։ Այսպէս կը պատմէ Բուզանդ զԱրշակայ թէ զՄամիկոնեանս, դայեակս իւր, որ առ հարբ նորա Տիրանաւ «պառակտեալք և քակտեալք էին յընտանութենէն և յամենայն գործոց Հայոց»՝ հաստատեց յիւրեանց նախնի պաշտաման զինուորութեան. «Ցայնմ ժամանակի ի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից։... Ապա երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց

աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընտանութիւնն, զի պատակտեալք և քակտեալք էին յընտանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խօլութեանն Տիրանայ։ Եւ կացոյց արքայն զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութեան ազգին իւրեանց, և զՎասակ զմիջին եղբայրն զիւր դայեակն ի սպարապետութիւն զօրավարութեան, սոյնպէս և զկրտսերն ի պէտս զօրացն կացուցանէր» (Բուզ. Դ. Բ.)։ Այսպէս սպարապետք ունէին մի կամ աւելի օգնականներ մշտնջենաւոր կամ առժամանակեայ, զորս կու տար թագաւորն կամ ինքեանք կ'ընտրէին սպարապետքն. բայց որպէս սպարապետքն՝ նոյնպէս օգնականք նոցա պարտէին լինել երևելի իշխանք կամ սեպուհք նախարարական տոհմերէ։ Այսպէս Բուզանդ ասէ զՎահանայ Ամատունւոյ, թէ էր միշտ օգնական Վաչէի սպարապետին, զի ի նոսա յերկոսին էր մանաւանդ վստահ թագաւորն. «Բայց վստահ լինէր (Խոսրով) ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց մեծաց, և ի քաջն Վահան Ամատունի։ Գումարէր զզօրսն ամենայն տանցն աւագանւոյն ընդ զօրսն արքունի, և տայր զգումարտակն ամենայն ի ձեռս նոցա, և հանապազ կային ի քաջութեան ի մարտ պատերազմի ի սահմանս Պարսից, և ոչ տային անխտիր արշաւել աւերել զերկիրն Հայոց» (Բուզ. Գ. Ը.)։ Այսպէս նաև ի պատերազմին Մազքթաց «նիզակակից» էին Վաչէի սպարապետին «Բագարատ Բագրատունի, Մեհընդակ և Գարեգին Ռշտունիք, Վահան նահապետն Ամատունեաց տոհմին և Վարազ Կամինական, որ հասանէին հարկանէին սատակէին զզօրսն Ալանացն և Մազքթանցն և Հոնացն» (Բուզ. Գ. Է.)։ Զբաբկանէ ումեմնէ Սիւնւոյ ասէ Բուզանդ, թէ «էր նիզակակից Մանուէլի սպարապետին զամենայն աւուրս կենաց նորա» (Բուզ. Ե. ԽԲ.), և Փարպեցին (ՀԵ.) զերկուց եղբարց Կամսարականաց, զՆերսեհէ և զՀրահատայ ասէ, թէ «ընդ նմա (ընդ Վահանայ) էին միշտ, և անքակ ի նմանէ և միաբան»։ Բայց որպէս արդէն ասացաւ՝ ունէր իշխանութիւն թագաւորն այլոց յանձնել մասն մի ի զօրաց և ղրկել ուրոյն ի պատերազմ առանց սպարապետին։ Այսպէս Խոսրով իշխանաց ոմանց յանձնեց նուաճել զապստամբութիւն բդեշխին Աղձնեաց. «Ապա առաքէր թագաւորն Հայոց (Խոսրով) զբարեկիր զծառայս իւր, զիշխանն Կորդուաց զՋոնն, և զիշխանն Մեծի Ծոփաց զՄար, և զիշխանն Ծոփաց Շահէի Ներսեհ, և զիշխանն Սիւնեաց զՎաղինակ, և զիշխանն Հաշտենից զԴատ, և զիշխանն Բասենոյ զՄանակ, հանդերձ բազում զօրօք, որ չոգան յաղթեցին զօրացն Պարսից (որ օգնական էին բդեշխին), և սպանին զբդեաշխն» (Բուզ. Գ. Թ.)։ Նոյն Խոսրով զԴատաբէ ոմն իշխան Բզնունեաց ղրկեց մեծ բազմութեամբ, իբր քա-

ռասուն հազարաւ ընդդէմ Պարսից. «Եւ մինչդեռ նա (Խոսրով) յայնմ
գործ զմայրեօքն տնկելովք էր՝ յանկարծակի գուշակ հասանէր առ
Խոսրով ի Հէր և ի Զարաւանդ գաւառ(է), թէ պատրաստեալ են
զօրքն Պարսից գալ հասանել ի գործ պատերազմի ի վերայ քո: Ապա
հրաման ետ արքայ Խոսրով Դատաքայ նահապետի Բզնունեաց՝ գու-
գազ հանել յաշխարհէ աւելի քան զչափն և զհամար զօրսն մատե-
նիկ գնդաւն ընդ առաջ նոցա խաղալ հասանել ի դիմի հարկանել,
արգելուլ զթշնամիսն» (Բուզ. Գ. Ը.): Առ Վարդանամբք Առանձար
ոմն սեպուհ Ամատունի զրկուեցաւ զօրաբաժնիւ երթալ լրտեսել
Պարսից բանակը ի Հեր և ի Զարաւանդ գաւառ, ուր և տրուեցաւ
փոքր ճակատամարտ ընդ վերջապահ գնդին Պարսից. «Առաքէր երա-
նելի սպարապետն Հայոց Վարդան, միաբանութեամբ աւագանւոյն
որ ընդ նմայն էին՝ սեպուհ մի յազգէն Ամատունեաց, որում անուն
էր Առանձար, իբրև երեք հարիւր հեծելով, երթալ լրտեսել զբազ-
մութիւն զօրացն Պարսից... և երթեալ Առանձար և գունդն որ ընդ
նմա... և զհզօր վերջապահ թևով միով անկեալ՝ զբազումս հա-
նէին ընդ սուր և ինքեանք դառնային ողջանդամք» (Փարպ. Լէ.):
Երբեմն ալ, երբ այլևայլ թշնամի գունդերու հետ էր պատերազմը
հեռաւոր տեղեր՝ զօրքը մաս մաս կը յանձնուէր այլևայլ զօրավար-
ներու: Այսպէս անգամ մը Արշակ, ըստ Բուզանդայ «զիւր զօրսն
բաժանեաց ընդ երիս, և տայր զմի գունդն Վասակայ սպարապե-
տին, և զերկրորդ գունդն ի ձեռն Բագոսի եղբօր նորին, որ ի գործ
արութեան քաջ էր անհնարին, բայց ի գործ իմաստութեանն բա-
խած էր, և զմիւս գունդն իսկ թագաւորն Արշակ առնոյր» (Բուզ.
Դ. ԻԲ.):

**11.** Պատերազմունք, ինչպէս զարդիս, նոյնպէս ի հնումն,
թէպէտ տարբերք բազում մասամբ՝ չէին մղուեր խառնիխուռն,
առանց իրիք արուեստգիտութեան: Այնպէս երևելի զօրավարներ էին
Աղէքսանդր, Կեսար՝ ինչպէս Նաբոլէոն և ուրիշ արդի զօրավար-
ներէն շատք: Հայք ալ ունէին իրենց պատերազմական արուեստն
ըստ հանգամանաց ժամանակին: Պատմութիւնը կ'ընծայեցունէ մեզ
շար իմն զօրավարաց, մանաւանդ Բագրատունի և Մամիկոնեան ցե-
ղէն, որ երբեմն կը գործէին գրեթէ սքանչելիս: Չէր դոյզն ոք զօ-
րավար Վահան, որ, եթէ չէ պատմութիւն Փարպեցւոյն բոլորովին
աւելաբանութիւն՝ սակաւաձեռն գնդաւ իբր երեք տարի զդէմ կա-
լաւ քան զիւրն տասնապատիկ աւելի մեծ զօրութեանց: Գլխաւոր
քաջութիւնն էր սպարապետին կամ զօրավարին, որ կը հրամայէր
բանակին՝ մանաւանդ ի յարդարել և ի կազմել ճակատ, և այս կազ-
մութենէ կախեալ էր յաճախ յաղթութիւնն: Խորենացին կը պատմէ

թէ ի պատերազմի ուրեմն Արտաշիսի ընդդէմ Հռոմայեցւոց, մինչ որդիքն արքայի առ խակութեան մերձ էին ի վտանգիլ՝ Սմբատ սպարապետ հասնելով այնպէս իմն յարգարեց և մղեց ճակատը, որ յաղթութիւնը դարձաւ Հայոց, և Հռոմայեցիք վանեցան մինչև Կեսարեայ սահմաններն։ «Աղմուկ շփոթից իմն լեալ յարևմուտս. ընդ որ վստահացեալ Արտաշէս՝ նշկահեալ ընդդիմանալ Հռոմայեցւոցն, ոչ տալով հարկս։ Իսկ Դոմետիանոսի կայսեր ցասուցեալ, զօրս ի վերայ Արտաշիսի առաքէ, որոց հասեալ ի կողմանս Կեսարու՝ զՏիրան և զզօրսն արևմտեան առաջի եղեալ ածին տագնապաւ մինչև ցքաջ ընդարձակ հովիտն Բասենոյ. յորում ընդդէմ դիպեալ Արտաւազդ արևելեայ և հիւսիսային զօրօքն, հանդերձ ամենայն որդւովքն արքայի, և պատերազմեալ՝ սաստկապէս վտանգին։ Յորոյ ի վերջս պատերազմին հասեալ Սմբատ հարաւային զօրօքն, ընդ մէջ անցեալ ապրեցուցանէ զորդիսն արքայի, յաղթութիւն և զրաւ պատերազմին արարեալ։ Զի թէպէտև ծերագոյն էր՝ երիտասարդապէս յարդարեաց և մղեաց զճակատն, և հետամուտ եղեալ հալածեաց զզօրսն Հռոմայեցւոց մինչև ի սահմանս Կեսարու» (Խոր. Բ. ԾԴ.)։ Ճակատ յարդարել էր՝ կարգաւ իմն և արուեստիւ շարել զզօրն ի դիպան վայրի ըստ դրից և զօրութեան թշնամւոյն, և այնպէս մղել յառաջ։ Ընդհանրապէս կը բաղկանար ճակատն երեք մասերէ որ կը կոչուէին Թև կամ առաջ, այն է յաջմէն, յահեկէն և ի միջոցէն. երբեմն նաև չորրորդ մասէ, որ էր իբրև նեցուկ կամ թիկունք օգնականութեան այն երեք բաժիններէն միում կամ միւսումն, մանաւանդ տկարագունին, և կամ այնմ, որոյ ախոյեանք թշնամւոյն կողման էին հզօրագոյն կամ վարժ։ Գրեթէ յամենայն պատերազմունս Վարդանայ և Վահանայ Փարպեցին կը յիշէ այս կարգը։ «Եւ հասեալք ի ժամ մարտին՝ հայեցեալ տեսանէին ըստ օրինի կարգման զգունդսն Պարսից։ Կարգէր և զիւր գունդն երանելի զօրավարն Հայոց Վարդան ըստ բաւականի այրուձիոյն իւրոյ ընդդէմ նոցա։ Յերիս առաջս բաժանեալ՝ տայր ի ձեռս իւրաքանչիւր զօրագլխի։ Աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զիշխանն Արշարունեաց զԱրշաւիր Կամսարականն... և նիզակակից տայր նմա զՄուշ զաւագ սեպուհ յազգէն Դիմաքսենից. և զահեակ կողմն տայր ի ձեռն Խորենայ Խորխոռունւոյ, և զօրավիգն ընդ նմա կացուցանէր զՀմայեակ Դիմաքսեանն, և ինքն սուրբ զօրավարն Հայոց Վարդան պատրաստէր զինքն միջոյ տեղւոյն յարձակման։ Եւ այսպէս յօրինեալ զճակատն յարձակեցան ի վերայ թշնամեացն»։ Նոյն յօրինուածը կը տեսնենք մեծ պատերազմին մէջ ուր նահատակեցաւ Վարդան և այլքն։ «Սուրբն Վարդան բաժանեալ զիւր գունդն յերիս յառաջս,

միջոցի գնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց և զմարզպետն Միհրշապուհ՝ հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ և երանելի արամբն Արտակաւ իշխանաւն Մոկաց և այլ աւագ նախարարօքն. և կողմանն աջոյ կարգէր աւագ զերանելին Մաղխազ Խորէն՝ հանդերձ երանելեաւն Թաթլաւ տերամբ Վանանդայ և սուրբ արամբն Ներսեհիւ Քաջբերունւով և այլ աւագ նախարարօքն. և ընդ ահեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն և իշխանաւն Առաւեղենից Փափագաւ, և այլ իշխան նախարարօքն Հայոց. քանզի յայնմ կողմանէ առաւելապէս երևէր ղակիշ գնդին սևնի զօրուն և այլ զօրաւոր արանց նշանք դրօշիցն» (Փարպ. ԼԹ.)։ «Լուեալ թէ առ վաղիւն գունդն Պարսից գայ ի վերայ նոցա ի պատերազմ,... կազմէին և նոքա ընդդէմ նոցա ի պատերազմ, բաժանեալ զչորեքհարիւրսն ի չորս առաջս. միջին վայրին կարգէին զօրագլուխս ի ժամուն զիշխանն Սիւնեաց զԲաբգէն և զքաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, և ահեակ կողմանն զԳարջոյլն Մաղխազ, և կողմանն աջոյ զԳնունեխսն երկոսին, զիշխանն Գնունեաց Ատոմ և զնորուն զեղբայրն զԱռաստոմ, և ընդ մէջ երկոցունց մասանցն զքաջն և զընտիրն զիշխանն Շիրակայ զՆերսեհն Կամսարական և զնորուն եղբայրն պատրաստական յօրինէին, զի ո՛ր կողմն տկարասցի, ասեն, նոցա հասեալ փութով զօրացուցեալ օգնեսցեն և յամենայն կողմանց ոյժ լինիցին» (Փարպ. ԿԹ.)։ «Սկսանէր այնուհետև զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան յօրինել ըստ պատշաճի զիւրաքանչիւր կողմն ճակատուն։ Զմիջոց կողմն բազում այրուձիովն տայր ի ձեռն լաւի առն Սահակայ մարզպանին ասպետի. և ի կողման աջոյ թևին կարգէր զԲաշղ Վահևունի և զԲաբգէնն Սիւնի և զԱտոմն Գնունի և զՓապակն Պալունի, իւրաքանչիւր այրուձիով և այլ ևս յաւելուածով, և յահեկէ կողմանէ հանդերձ ուխտասէր Կամսարականօքն Ներսեհիւ և Հրահատաւ, և իւր սիրելի եղբարբն Վասակաւ, և ընդ աջմէ իւրաքանչիւր այրուձիով գնդացն կազմէր զինքն» (Փարպ. ՀԱ.)։ «Զգունդն զօրացն կազմէր Մամիկոնեանն Վահան ըստ օրինի ճակատուն պատրաստութեան, և տուեալ զկողմն աջոյ ի ձեռս Բարշլի Վահևունւոյ և Սատոնի Գաբեղինի, և զկողմն ահեակ տայր Վախտանգայ արքային Վրաց, և ի միջոյ կողմանն կազմէր զինքն երկոքումբք արամբքն որդւովք երանելւոյ Արշաւրայ և երանելեաւ տերամբն Գնունեաց, և զերանելին ասպետն Սահակ և զՍիւնին Բաբգէն ընդ մէջ իւր և Բարշլի կացուցանէր» (Փարպ. ՀԴ.)։ Ճակատ յարդարել կար յառաջագոյն իսկ քան զՎարդանեանս և զՎահանեանս։ Խորենացին կը յիշէ ծերունւոյն Սմբատայ սպարապետին Արտաշիսի ճակատ յարդարելն երիտասարդապէս. «Ի վերջս պատերազ-

մին (Արտաւազդայ ընդ Հռոմայեցիս) հասեալ Սմբատ հարաւային զօրօքն, ընդ մէջ անցեալ ապրեցուցանէ զորդիսն արքայի, յաղթութիւն և զրաւ պատերազմին արարեալ. զի թէպէտև ծերագոյն էր՝ երիտասարդապէս յարդարեաց և մղեաց զճակատն, և հետամուտ եղեալ հալածեաց զզօրսն Հռոմայեցւոց մինչև ի սահմանս Կեսարու» (Խոր. Բ. ԾԴ.)։ Նոյնպէս բաժանումն ճակատուն յաջ և յահեակ կը գտնենք վաղ իսկ առ Արտաշիսիւ ըստ Խորենացւոյն. «Իբրև հանդէպ ճակատուն Երուանդայ ելին նշանք Արտաշիսի՝ Արգամայ առեալ զբազմութիւն հետևակացն ի կողմ ելանէր. և Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել, և յառաջեալ զճակատն իւր՝ իբրև զարծուի յերամս կաքաւուց խոյանայր։ Իսկ Նախարարքն Հայոց, որ յաջ և յահեակ թևսն էին՝ ի նա խառնեալ միանային» (Խոր. Բ. ԽԶ.)։ Կայ նաև յիշուած «յառաջապահ» և «վերջապահ»։ Այսպէս, ըստ Բուզանդայ, յառաջնում կռուին Պապայ որում օգնական էին Յոյնք՝ յառաջապահ էր գունդն Հայոց. «Ապա զօրավարն Հայոց Մուշեղ գունդ կազմեաց և յառաջեաց հանդերձ Հայոց գնդաւն, առաջապահ անցանէր առաջի թագաւորին Պապայ և զօրացն Յունաց» (Բուզ. Ե. Ա.), և Վարդան, ըստ Փարպեցւոյն, թողուց զիւր եղբայրն զՀամազասպեան վերջապահ. «Եւ զՀամազասպեան զիւր եղբայրն թողոյր վերջապահ, և պատուիրէր նմա մի՛ զոք բռնադատել, այլ յորդորել միայն բանիւք» (Փարպ. ԼԹ.)։

Ճակատ յօրինելու այս կերպը կը թուի լեալ սովորական։ Առ Բուզանդայ ունինք սակայն այլ իմն ազգ ճակատ յարդարելոյ օրինակ, որ ունէր հռոմէական լէգէոնաց կամ մակեդոնական փաղանգին նմանութիւնը, և զոր թերևս ուսան Հայք ի Հռոմայեցւոց։ Այս ճակատուն մէջ սպարակիրք կը շարուէին կարգաւ ամրակուռ վահանօք ի թիկանց նիզակաւորաց, այսինքն բուն պատերազմողաց, և ի վտանգիլ նոցա և յընկրկել՝ բանալով զվահանս իւրեանց կ'ընդունէին զնոսա ի ներքս իբրև յամուր պարիսպ։ Այսպէս սպարակիրք լինէին ապաւէն պատերազմող մասին, և այսպէս կը նկարագրէ զնոսա Բուզանդ ի պատմութեան մեծի կռուին, որ եղաւ ի սկզբան թագաւորութեանն Պապայ ի Ձիրաւ ըստ Խորենացւոյն։ «Լեգէոն զօրուն բազմութիւնն, ասէ Բուզանդ, այսինքն Յունաց զօրացն սպարակիրն, սոյնպէս և Հայոց սպարակիրն, զթիկունս ունէր զօրացն, վահանօք փակելովք զինքեամբք, իբրև զամուր քաղաք ինչ ի թիկանց։ Յորժամ տարածանէին ինչ զօրքն Պարսից զզօրսն Յունաց և կամ զգունդ նիզակաւորացն Հայոց՝ (Յոյնք) ի լեգէոն վահանաւորացն Յունաց, և (Հայք) ի սպարակիրն Հայոց իբրև ի բերդ մտեալ հանգչէին։ Իսկ յորժամ ոգի առեալ սակաւիկ մի և

անդուստ ելեալ յարձակէին,... և յաղթահարէին ինչ զնոսա զօրքն Պարսից՝ նոքա իբրև ի բերդ ամուր դիմէին ի լեգէոնն (Յունաց) և կամ ի զօրսն վահանաւորս (Հայոց), և նոցա բացեալ զվահանսն՝ կնոսա ի մէջ առեալ փակէին» (Բուզ. Ե. Ե.)։ Բուզանդ կու տայ նոյն իսկ Շապհոյ պատմել զայս աւագանւոյն իւրում զարմանօք.— «Շապուհ թագաւորն յորժամ յաշխարհ իշխանութեանն իւրոյ հասանէր՝ զարմացեալ ընդ քաջութիւն գնդին կռուոյն, որ դիպեցաւ նմա՝ ասէր. Զարմացեալ եմ ես զոր ինչ տեսի, զի իմ ի մանկութենէ իմմէ համակ ի ճակատու և ի կռիւ մտեալ եմ, և բազում ամք են զի հասի ի թագաւորութիւն, և առանց կռուոյ ամ չեմ լեալ. բայց իմ ջերմ կռիւ զայս է տեսեալ, որ այս անգամս դիպեցաւ ինձ։ Զի յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին՝ այնպէս յարձակէին, որպէս զլեառն մի բարձր և կամ որպէս աշտարակ մի հաստաբեստ, հզօր և անշարժ. և յորժամ մեք զնոսա սակաւ մի շարժէաք՝ նոքա (ի վահանաւորսն) ապաստան լինէին. և նոցա զվահանափակսն բացեալ՝ զնոսա իբրև ի քաղաքորմ պարսպաւոր ամրացեալ ընդունէին։ Եւ անտի սակաւիկ մի ոգի առեալ՝ դարձեալ ելեալք մարտնչէին, մինչև անմի զզօրսն Արեաց առնէին» (Բուզ. Անդ.)։ Վահանաւորաց գործն էր նաև նշանաւոր զօք թշնամի զվիրաւորեալ՝ փակել վահանօք, որպէս զի չսպանուէր, երբ այնպէս կը հրամայուէր նոցա։ Այսպէս ի պատերազմին Մանուէլի ընդ Վարազդատայ՝ այս վերջնոյն կուսակիցներէն զԳարեգին Ռշտունի, որ անկեալ էր վիրաւոր՝ սպարակիրք Մանուէլեան գնդին կը պահէին վահանօք հրամանաւ աներցյ նորա Համազասպենոյ Մամիկոնենի։ Այս Գարեգին, նահապետ Ռշտունեաց, առած էր զՀամազասպուհի, քոյր Համազասպենոյ Մամիկոնենի, և ի յարձակել զօրաց Շապհոյ ի Հայս յետ ըմբռնման Արշակայ՝ Գարեգին թողլով զիւր կինն փախաւ, և Համազասպուհի անկանելով ի ձեռս Պարսից կախուեցաւ Վանայ բերդին աշտարակէն։ Յետ գալստեան Պապայ ի Հայս, երբ Պարսիկք վանեցան Հայաստանէ՝ Գարեգին դարձաւ ի Հայս։ Ի պատերազմին Մանուէլի ընդ Վարազդատայ՝ էր նա Վարազդատայ կողմէն, և վիրաւորեալ անկաւ ի ճակատուն։ Մինչ Մանուէլեանք որ եղան յաղթող, կը հալածէին զՎարազդատեանս՝ Համազասպեան հանդիպելով Գարեգնի՝ գթաց ի նա և հրամայեց սպարակիրներուն ծածկել զնա վահանօք, որպէս զի չսպանուէր. բայց երբ սպարակրաց գնդապետն անցնելով ընդ այն իմացաւ, թէ Գարեգին Ռշտունի էր, զոր կը պահէին վահանաւորք հրամանաւ Համազասպենոյ՝ հեգնելով զՀամազասպեան՝ զարկաւ սպաննեց զԳարեգին։ Բուզանդ կը պատմէ զայս իւր փափուկ ընտանի լեզուաւ, որ արժանի է ընթերց-

ման։ «Մինչդեռ գունդն Մանուէլեան էին զկնի փախստէիցն՝ գայր հասանէր Համազասպեան, սեպուհ մի Մամիկոնեան տոհմէն, անցանէր առ անկելովք դիակամբքն և առ խոց վիրաւորօքն պատերազմին. և ընդ նոսին ընկեցեալ էր և զԳարեգին, տէր գաւառին Ռշտունեաց, բայց ողջ կայր։ Այս Գարեգին փեսայ լեալ էր յառաջ նորին Համազասպէի, զքոյր նորին Համազասպուհի անուն ունէր կին։ Եւ իբրև եկն թագաւորն Շապուհ յերկիրն Հայոց՝ սա եթող զկինն իւր և փախեաւ։ Ապա տարան զՀամազասպուհի յերկիրն Տոսպայ, ի քաղաքն ի Վան, և հանեալ կախեցին զնա Պարսիկքն զբարձր աշտարակէն, որ կայր ի վերայ քարանձաւին, ի կախաղանի սպանին զնա։ Իսկ յայնմ աւուր իբրև անկեալ կայր այն Գարեգին ի մէջ անկելոցն՝ եկն Համազասպեան անէր նորուն անցանել առ նոքօք. աղաղակեաց Գարեգինն և ասէ. Տէր Համազասպեան, և զիս տես. Հրաման տուր նժոյգ մատուցանել, թող հեծայց։ Եւ ասէ ցնա Համազասպեան. Ո՞վ ես դու։ Եւ ասէ. Ես եմ Գարեգին Ռըշտունի։ Եւ ետ հրաման Համազասպեան վահանաւորացն որ ընդ նմա էին՝ ասէ. Իջէք և դիք զվահանսդ ի վերայ նորա, և պահեցէք։ Եւ ինքն էանց։ Ապա իջին վահանաւորքն դնել զվահանսն ի վերայ, և կային պահէին ըստ հրամանին տուելոյ։ Ապա յետ այսորիկ գայր Դանուն ոմն գամապետ սպաքակրաց գնդին Մանուէլեան զօրացն. ետես զի իջեալ էին վահանաւորք ի վերայ, և զԳարեգինն պահէին. եհարց ցնոսա, թէ Ո՞վ է այդ, և դուք հիմ իջեալ կայք յայդմ տեղւոջ։ Ասեն նոքա, թէ Սա Գարեգին Ռշտունեաց տէր է, և մեզ հրաման ետ Համազասպեան իջանել պահել զսա։ Եւ մեծաւ ցասմամբ զայրանալով՝ ի բարկութիւն մեծ բորբոքէր Դանունն և ասէր. Արդ ուրեմն վերստին կամի Համազասպեան զսա իւր փեսայ առնել, և Համազասպուհի զքոյր իւր տալ սմա կնութեան. վասն այսորիկ անխայեաց ի դա և պահել հրամայէր։ Եւ անդէն ոտն ածեալ էջ ի ձիոյն, եհան զթուրն, մատուցեալ ի նա՝ պատառ պատառ կոտորեալ, անդէն ցրեալ սատակեաց զնա» (Բուզ. Ե. Լէ.)։

**12.** Փող հարկանել սովորութիւն էր ի ճակատուն, մանաւանդ իբրև նշան յարձակման։ ԶՍմբատայ ասէ Խորենացին, թէ ի ձայն փողոյ յառաջ մղեց զճակատն ընդդէմ զօրուն Երուանդայ. «Եւ Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել, և յառաջեալ զճակատն իւր իբրև զարծուի յերամս կաքաւուց խոյանայր» (Խոր. Բ. ԽԶ.)։ Բուզանդ ի բանակին Արշակայ ի մէջ վառելոց ազգի ազգի զինու և զարդու՝ կը յիշէ փողարներ. «Քառասուն հազար, ասէ, կուռ վառեալք, նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք, անվրէպ կորո-

վիք... բազմաձայն փողարօքն» (Բուզ. Դ. Ժ.)։ Փողերու ձայնն կուտար արդարև ահաւորութիւն։ Այսպէս Փարպեցին յետ պատմելոյ, թէ Վահան ի գալն առ Նիխոր պատգամաւոր Վաղարշու, «մերձեալ ի գիւղն ուր էր Նիխոր, հրամայէր զօրուն որ ընդ նմա էին՝ վառել ըստ օրինի պատրաստութեան պատերազմի»՝ ասէ. «Եւ տայր հրաման (Վահան) հնչեցուցանել զփողսն պատերազմականս, և ի սաստկութենէ փողոցն ձայնից հնչեալ երկիրն թնդէր» (Փարպ. ՂԱ.)։ Փող հնչեցունել ի բանակին այնպէս մեծ էր առ Պարսիկս, որ սպարապետն միայն ունէր իշխանութիւն տալ հարկանել փող՝ երբ կը մտնէր ի բանակն. ուստի Նիխոր, ըստ Փարպեցւոյն, մեղադրեց զՎահան, որ այնպէս փողով մտաւ ի բանակն Արեաց.—«Ոչ ըստ կարգի Արեաց առնես դու զայդ, ասէ. քանզի ի չուի փողով յԱրեաց բանակ սպարապետն միայն Արեաց իշխէ մտանել, և այլ ոք զայդ համարձակութիւն ի Պարսիկս ոչ իշխէ առնել» (Անդ)։

**13.** Նաև մին ի կարևոր կարգաց պատերազմի, ինչպէս առ այլ ազգս, նոյնպէս առ Հայս՝ էր իւրաքանչիւր գնդի ունել առանձին դրօշ, որով մարթ էր ճանաչել գունդերն, ուստի և շատ անգամ կը կոչուի նշան։ Բուզանդ զօրաց այլ և այլ ազգ սպառազինաց հետ կը յիշէ դրօշաւորներ. «Համակ հեծելազօրք (էին զօրք Արշակայ), զրահաւորք, պատենազէնք, սաղաւարտաւորք, դրօշաւորք, կազմ նշանաւորք» (Բուզ. Դ. Ի.)։ Մինչ Ներսիսի հետ կը նստէր Պապ Նպատ լերան գլուխը, դիտել Հայոց առաջին կռիւն ընդ Պարսից՝ սկսաւ կասկածել զՄուշեղէ, թէ Պարսից կողմն անցաւ, երբ նշանք Մուշեղի սկսան չ'երևել.—«Մինչդեռ նա (Ներսէս) զաղօթսն մատուցանէր առ Աստուած՝ խաղացեալ ճակատեալ իբրև զհուր ամենայն զօրքն Հայոց ընդդէմ զօրացն Պարսից. իսկ գունդն Մուշեղեան յառաջեալ քան զայլ գունդսն՝ յառաջամուխ տագնապեալ երթային. մինչ զի նայէր թագաւորն և տեսանէր, զի ըստ ակն տնկանէին, մինչ զի ոչ երևէին թագաւորին նշանքն Մուշեղի։ Իսկ իբրև չերևել սկսան նշանքն՝ աղաղակել սկսաւ թագաւորն Պապ առ Ներսէս և ասէ. Դու խլեցեր այրեցեր զիս. զի ասացի ես, բամ, Մի՛ յղեր զայրն ի գործ պատերազմիս. ահա ի զօրսն Պարսից անկաւ, և արդ մեծամեծ վնասս գործեսցէ» (Բուզ. Ե. Դ.)։ Դրօշը կը թուի թէ կ'երթար յառաջոյ գնդին. ուստի Մանուէլեան գնդին համար ասէ նոյն Բուզանդ, թէ դրօշիւք ելան դուրս աւանէն ընդդէմ գնդին Մերուժանայ.—«Եւ ինքեանք վառեալք, կարգեալք, կազմեալք ի պատերազմն, ի մի վայր գումարեալք, նշանս արձակեալք դրօշս փողփողեալս՝ ըստ Գեւղն աւան ի դուրս ելանէին» (Բուզ. Ե. ԽԳ.)։ Վարդան դրօշներէն ծանեաւ Պարսից զօրաց մէջ Սիւնեաց գունդը.—«Ընդ

աՀեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն և իշխանաւն Առաւեղենից Փափագաւ և այլ Նախարարօքն Հայոց, զի յայն կողմանէ առաւելապէս երևէին... սիւնի զօրուն և այլ զօրաւոր արանց նշանք դրօշիցն» (Փարպ. ԼԹ.)։ Կ'երևի թէ ոչ միայն իւրաքանչիւր գունդ, այլև երևելի անձինք, մանաւանդ սպարապետն՝ ունէին նշան ինչ իրենց սաղաւարտին վրայ, որով կը ծանօթանային։ Մուշեղ, ըստ Բուզանդայ, իւր նշանը բերաւ Ներսիսի օրՀնել.—«Մուշեղ զիւր նշանն և զզէնն մատուցանէր առ Ներսէս զի օրՀնեսցէ» (Բուզ. Ե. Դ.)։ Մերուժան, ըստ պատմելոյ նորին իսկ Բուզանդայ՝ իւր նշանին նման նշաններ տուած էր շատերուն, չյայտնուելու Համար ճակատուն մէջ.—«Մերուժան զիւր զզէնն և զարդ և զնշան սաղաւարտին բազմաց եդեալ էր զնոյն օրինակ, և զբազումս յիւր կերպարանեալ էր ի մէջ իւրոյ գնդին, և ինքն զիւր նշան ոչ ունէր։ Սակայն Մանուէլ իբրև տեսանէր զնորա գունդն՝ Հանդերձ իւրով գնդաւն առիւծաբար վարազօրէն յարձակեալ՝ ի նորա գունդ'ն խառնեցաւ. ուշ եդեալ այնոցիկ որ զՄերուժանայ նշանսն ունէին՝ Համարէր եթէ զՄերուժանն սպանանիցէ, և զբազում ախոյենից Հատանէին զգլուխս, որք զնոյն զնորին Մերուժանայ ունէին զնշանս, և տեսանէին զի չէր նա» (Բուզ. Ե. ԽԳ.)։

**14.** ԸնդՀանրապէս գունդք թշնամեաց ի ճակատուն կը կենային դէմ յանդիման բացագոյն ի միմեանց. բայց կը պատաՀէր շատ անգամ խառնել ընդ միմեանս, և զայս կը նշանակէ բառն «խառնուրդ»։ «Իսկ թագաւորն Պապ կարի ստիպէր զեպիսկոպոսապետն Ներսէս ասել, թէ Սոէպ կաց յաղօթս և աղաչեա զՏէր մինչդեռ խառնուրդքս են» (Բուզ. Ե. Դ.)։ «Իսկ թագաւորն Պարսից Շապուհ գայր Հասանէր ամենայն զօրօքն իւրովք ի տեղի պատերազմին, և գտանէր զզօրսն Յունացն և զգունդն Հայոց, զի կազմեալ պատրաստեալ էին ի գործ պատերազմին։ Եւ լինէին խառնուրդք ճակատուն. ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից» (Բուզ. Ե. Ե.)։ Կը գտնենք նաև ոչ սակաւ անգամ մենամարտել երկու զօրավարաց երկուստեք, և շատ անգամ յելից մենամարտութեանն կախեալ էր յաղթութիւն կամ պարտութիւն բովանդակ զօրուն։ Այսպիսի մենամարտութիւն ի ճակատու երկիցս կը յիշէ Բուզանդ. մի՝ Մանուէլի ընդ Վարազդատայ.—«Թագաւորն Վարազդատ և սպարապետն Մանուէլ զնիզակս առեալ, միմեանց յարձակեալ ախոյեանք ելանէին։ Իբրև զաչս ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ և նայէր ընդ գալն իւր և տեսանէր զսպարապետն Մանուէլ՝ ի մեծութենէն Հասակին և ի շքեղութենէ անձինն և յամրակուռ յերկաթապատ յօտից մինչև ցգլուխն առՀասարակ յանվթւսր զինէն, ի Հաստամեստ

*յանձնէն և ի հաստատուն երիվարէն և յասպազէն վառելոյն յանշարժ սպառազինէն համարեցաւ կշռեաց զնա ի միտս իւր իբրև զլեառն մի բարձր զանմատոյց։ Սակայն անձեալ զմահ ընդ միտս՝ յարձակեցաւ, զի այնուհետև չունէր ակն անձինն ապրելոյ։ Սակայն զի մանուկ մարդ էր արքայն Վարազդատ, իբրև ետես զնա այնպէս, զի չէր ինչ կռուոյ տեղեակ՝ էած զմտաւ թէ ի զրահսն ոչինչ կարիցէ նիզակ գործել, առ ձեռաց կորովութիւնն զնիզակն ընդ բերան արկանէր զօրավարին Մանուէլի։ Իսկ Մանուէլ բուռն հարկանէր զնիզակէն. հանեալ ի նմանէ զնիզակատէգն՝ ընդ իւր թուրծն հանէր, և բազում զիւր թափէր զատամունսն, զնիզակն յինքն հանէր յարքայէն։ Եւ արքայն Վարազդատ ի փախուստ դառնայր յերեսաց զօրավարին Մանուէլի, և անդէն Մանուէլ զտէգ նիզակին ի ձեռինն կալեալ, և նիզակաւն ի կառափն մատուցեալ ծեծէր զարքայն Վարազդատ. այնպէս տանէր իբրև ասպարէզս չորս» (Ե. Լէ.)։ Միւս մենամարտութիւնն աւելի սաստիկ, Մանուէլի ընդ Մերուժանայ.—«Ապա զոյգ միտ եդեալ երկոցունցն՝ տեսին զՄերուժանն զի յայլակերպս լեալ էր. ապա ձայն տուեալ յառաջ կոչեաց զՄերուժանն Մանուէլ և ասէ ցնա. Ա՜յ կախարդ, ցե՞րբ խաբես ըզմեզ, և վասն քո և զայլս ևս տաս ջարդել. այլ մեք ծանեաք զքեզ զի աւադիկ կաս, և ապրել քեզ չիք հնար այսօր ի ձեռաց մերոց. զի այսօր էած կատարեաց զչարիս քո տէր Աստուած ի գլուխ քո, և մատնեաց զքեզ ի ձեռս մեր։ Իսկ յորժամ զայն լսէր Մերուժանն՝ անդէն վաղվաղակի նիզակ առեալ, յառաջ խաղացեալ, ախոյեան ելանէր Մանուէլի։ Սակայն յորժամ հարկանէին նիզակօքն, քանզի երկոքեան արքն յաղթք էին՝ երկոքեան ի ձիոյն յերկիր անկանէին։ Եւ անդէն նիզակակիցն Մանուէլի Բաբիկ, տէր գաւառին Սիւնեաց հասանէր, նիզակաւ ի վերուստ ի վայր ի կողին կարէր (զՄերուժան) ընդ գետինն, և ոչ կարէր յառնել։ Իսկ զսպարապետն Մանուէլ իւր վարուանդասպասքն յերիվարն հանէին, և զՄերուժանայ զգլուխն ի բաց հատանէին. և ամենայն զօրացն լինէր փախուստ, իբրև տեսին թէ Մերուժանն մեռաւ» (Բուզ. Ե. ԽԳ.)։*

**15.** *Ճակատք, մանաւանդ մեծամեծք, հազարաւոր զօրաց սուրերու, սուիններու և այլ սպիտակ զինուց—մինչդեռ չգոյին հրազէնք—պղնձապատ զրահներու և վահաններու, ոսկեղէն և արծաթեղէն նշանաց և սաղաւարտից փայլմանէն՝ մանաւանդ երբ կը պատահէին հանդէպ արեգական՝ կ'ընծայէին ապաքէն շքեղ իմն և ահեղ տեսիլ։ Խորենացին կը նկարագրէ Զիրաւի ճակատուն շքեղութիւնը, միանգամայն ահաւորութիւնն իւր հակիրճ և փայլուն ոճով, թէպէտ ոչ առանց հռետորական զարդու և պաճուճանաց, այսպէս.*

«Զօրքն Յունաց վառեալ էին ի զէնս ոսկւոյ և արծաթոյ, և երիվարք նոցա նոյնպէս զարդու։ Եւ էր տեսանել իբրև զպարիսպ ինչ, յորոց յոլովք ի ջղեայ և ի կաշեայ պահպանակաց զգեստուն զկարծրութեան վիմաց բերէին երևոյթս. և ի վերայ նոցա անխալամ գէսք նշանք արձակեալք իբր զսաղարթ ինչ հովանաւոր ծառոց։ Բայց զվիշապացն մանուածս ահագին բերանաբացութեամբ ուռուցեալ ի փչմանէ օդոյն՝ ոչինչ ուրեք կարեմ նմանեցուցանել, այլ միայն իբրև զլեառն ինչ ադամանդեայ խոնարհել ի ծով, զբովանդակ ճակատն Յունաց ի պարսկական զօրսն։ Քանզի և զնոսա էր տեսանել իբրև զհզօր ինչ գետ առ ի կողմն ի լայն ծաւալեալ, արդարև զջրոյ գոյն զրահազգեստացն բերէր տեսութիւն։... Իսկ ի ծագել արեգականն ընդդէմ մերոց զօրացն, ի պղնձապատ վահանացն նշոյլք զլերամբքն փայլատակէին իբրև յամպոյ մեծէ, և ի նոցանէ ի դուրս ոստչէին ի մերոց նախարարացն քաջ զրահաւորք, որպէս փայլատականց ճառագայթք. յորոց միայն ի տեսութենէն զանգիտեալ պարսկական գունդն, սակաւ ինչ և մերն, վասն ոչ կարել հայել ընդդէմ արեգականն ծագման» (Խոր. Գ. Լէ.)։ Նոյնչափ սեթևեթեալ, բայց գեղեցիկ է Վարդանանց ճակատուն երկայն և ազդու նկարագիրն առ Եղիշէի. «Իբրև այսպէս պատրաստեցան՝ երկոքեան կողմանքն լի սրտմտութեամբ և մեծաւ բարկութեամբ զայրանային, և գազանացեալ զօրութեամբ յիրեարս յարձակէին երկոքեան. և ամբոխ աղաղակին երկոցունց կողմանց իբրև ի մէջ ամպոց շփոթելոց ճայթմունս գործէր, և հնչումն ձայնից զքարանձաւս լերանցն շարժէր։ Ի բազմութենէ սաղաւարտիցն և ի փայլիւն պատենազէն վառելոցն՝ իբրև նշոյլք ճառագայթից արեգական հատանէին։ Նաև ի բազում սուսերացն շողալ, և ի ճօճել բազմախուռն նիզակացն՝ իբրև յերկնուստ ահագին հրաձգութիւնք եռային։ Քանզի ով իսկ է բաւական ասել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայնիցն, որպէս կոփիւնք վահանաւորացն և ճայթմունք լարից աղեղանցն զլսելիս ամենեցուն առհասարակ խլացուցանէին։ Անդ էր տեսանել շտապ մեծի տագնապին և զաղէտս ամբաւ տարակուսանացն երկոցունց կողմանցն, առ ի յանդուգն յարձակմանէն զմիմեանս բախելով. քանզի թանձրամիտքն յիմարէին և վատասիրտքն լքանէին, քաջքն խիզախէին և նահատակքն գոչէին։ Եւ խումբ արարեալ ամենայն բազմութեանն՝ զգետն ի մէջ փակէին, և զանգիտեալ գունդն Պարսից ի դժուարութենէ գետոյն՝ զտեղեաւն զեռալ սկսան։ Իսկ գունդն Հայոց հասեալ անցանէին, ձի ի վերայ առեալ յարձակէին մեծաւ զօրութեամբ։ Սաստկապէս բախեալք ընդ միմեանս՝ յերկոցունց կողմանց բազում վիրաւորք յերկիր անկեալ դիտթաւալ խաղային։

Ցայնժ մեծ տագնապի ի վեր հայեցաւ քաջն Վարդան, և տեսանէր զընտիր-ընտիր քաջ նահատակաց Պարսից զօրուն, զի զձախակողմն շարժեցին զՀայոց գնդին. մեծաւ ուժով յարձակէր ի տեղին, և զաջ թեւն Պարսից գնդին բեկեալ՝ արկանէր զդազանօքն, և շըրջան առեալ կոտորէր մինչև ի նոյն տեղի։ Եւ այնպէս շտապ տագնապի ի վերայ հասուցանէր՝ մինչև գունդն Մատեան քակեալ բաժանեցան ի մեծամուր պատրաստութենէն, դեռ ևս քաջ քաջ ի փախուստ դառնային։ Ապա դէտ ակն ի վեր համբառնայր Մուշկան Նիսալաւուրտն, քակեալ զօմանս տեսանէր ի գնդէն Հայոց և զկնի մնացեալ ի հովիտս լերանցն։ Վասն որոյ զաղաղակ բարձեալ՝ քաջալերէր շուրջ զիւրեաւ զզօրս Արեաց, որք զտեղի առեալ կային ընդդէմ գնդին Վարդանայ։ Եւ անդէն ի տեղւոջն երկոքին կողմանքն զպարտութիւն խոստովանէին, և առ յոյժ թանձր անկեալ դիականց՝ իբրև զքարակոյտս դերբկաց երևէին։ Զայն իբրև ետես Մուշկան Նիսալաւուրտն՝ մնայր գազանացն Արտաշրի, որ ի վերայ նոցա (գազանացն) նստէր ի բարձր դիտանոցին իբրև յամուր քաղաքի. և ի ձայն մեծ գալարափողոցն զիւր գունդսն ստիպէր, և յառաջամարտիկ զօրօքն զնա (զՎարդան) ի մէջ փակէր։ Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցօքն ոչ սակաւ նախճիրս ի տեղւոջն գործեաց, յորում տեղւոջ և ինքն իսկ արժանի եղև առնուլ զկատարեալ նահատակութիւնն։ Եւ յերկարեալ գործոյ պատերազմին՝ օրն տարաժամէր, և մօտ առ երեկս կարճատէր. բազմաց օրահասք մահու հասանէին, մանաւանդ ի թանձրութենէ դիականց մօտ առ մօտ խտացեալ իբրև զփայտահարս մայրաւորաց։ Անդ էր տեսանել զբեկումն նիզակացն և զխորտակումն աղեղանց. վասն այնորիկ և ոչ կարէին կալ ճշմարտիւ ի վերայ սուրբ մարմնոյ երանելեացն, և սաստիկ խուճապ տագնապի էր կողմանցն երկոցունց անկելոց։ Եւ որք մնացեալքն էին՝ վանեալք և ցրուեալք լինէին ի լեռնադաշտս ամուր ձորոցն, և յորժամ պատահէին միմեանց՝ դարձեալ միւս անգամ զմիմեանս սատակէին, և մինչև ի մուտս արեգականն անդադար լինէր գործ դառնութեանն։ Եւ քանզի գարնանային էր ժամանակն՝ ծաղկալից դաշտքն դառնային յորդահոսանս արեանց բազմաց։ Մանաւանդ յորժամ տեսանէր ոք զբազմակոյտ դիականցն անկելոց՝ սիրտն բեկանէր և աղիքն գալարէին, լսել զմնչիւն խոցելոցն և զմռնչիւնս բեկելոցն, զթաւալգլոր խաղալ սողալ վիրաւորացն, զփախուստ վատացն, զթաքուստ լքելոցն, զսրտաթափումն զանարիարանցն, զճչիւն կանացեացն, զողբս սիրելեաց, զաշխարումն մերձաւորաց, կվայ և զաւաղ բարեկամացն։ Քանզի ոչ եթէ կողմ էր որ յաղթեաց, և կողմ էր որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս

ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան» (Եղիշ. էջ 205—209)։ Եղիշէ հաւանականապէս չէր ականատես այն ճակատուն, ուստի այս աճարկու նկարագիրն է լոկ ստեղծումն, չանցնիր սակայն ճշմարտութիւնը, նա մանաւանդ կը մնայ իսկ յետ։ Եթէ գրիչ մարդկային և ճարտարագոյնն, որպիսի էր մեր բանաստեղծ պատմչին Վարդանանց, տկարացաւ նկարագրել հինգերորդ դարու դոյզն պատերազմ մը ըստ հետևանացն, որչափ ևս աւելի պիտի տկարանայ այլ ճարտարագոյն գրիչ՝ նկարագրել իննևտասներորդ դարու պատերազմ մը, տասնապատիկ աւելի և՛ անագորունութեամբ և՛ աղէտիւք, զորս կը թողու զիւր կնի։ Զմոռնանք սակայն, որ մեք հիմա քան զհինգերորդ դարու մարդիկ հազար չորեք հարիւր տարիներու երկայն փորձ մի աւելի ունինք մեր վրայ։

**16.** Երկրի մը ներքին վարչութեան կարևորագոյն պետոյից մին են հաղորդակցութեան հնարք։ Յայտնի է թէ արդի արագ և դիւրին հնարք, զորս կ՚ընծայեն մեզ ելեկտրականութիւնն և շոգին՝ չկարէին լինել յայնժամ. չէր սակայն երկիրն անմասն ի սովորական հնարից, որ էին հասարակաց ուղիք և սուրհանդակք։ Հաւանական է, թէ գաւառք և քաղաքք, գէթ մեծամեծք՝ կապուած էին իրարու հետ արքունի ճանապարհօք և արահետիւք, և եթէ չկային ևս ձեռագործ ջրանցք, գնայ նաւուց և նաւակաց՝ կային սակայն կամուրջք։ Ագաթանգեղոս կը յիշէ ճանապարհ ի Վաղարշապատէ յԱրտաշատ.—«Ինքն անցանէր հարուստ մի ի քաղաքէն... մօտ ի բուն պողոտայն, որ երթայր յԱրտաշատ քաղաք» (Ագաթ. ԺԷ.)։ Կը յիշուին նաև կիցք ճանապարհաց.—«Աճապարէին (զօրքն Հայոց) հասանել յառաջ մի ի խելս կամրջին Արտաշատու. ի կիրճս ճանապարհացն արգելլին զնոսա» (զԱնակ և զեղբայր նորա) (Ագաթ. Բ.)։ Բուզանդ կը յիշէ ճանապարհ ի Կոգ գաւառէ ի Բագրևանդ ընդ լերանցամէջս.—«Էին ի վայրսն, ընդ որ գալ էր գնդին (Մերուժանայ) ընդ ճանապարհն՝ լերինք ինչ, որում ի բնակչացն Եղջերք կոչեն։ Եւ մինչդեռ գայր Մերուժանն ի ճանապարհի գնդաւն իւրով՝ դիպեցան նմա ուղևորք, յորս հարցանէր Մերուժան և ասէր. Ճանապարհս ի Բագրևանդ ընդ որ երթայ։ Եւ ուղևորացն տուեալ պատասխանի ասեն. Ճանապարհ ընդ Եղջերս է» (Ե. ԽԳ.)։ Ծովակներու և գետերու վրայ ճանապարհորդութիւն ևս կար, ըստ Խորենացւոյն, թէպէտ աստ ուրեմն առ Արտաշիսիւ մուծուած.—«Ոչ այսպիսի ինչ (այսինքն՝ մեծամեծ արուեստից և գիտութեանց, ինչպէս աստեղագիտութեան կամ տոմարագիտութեան գիտք) ճանաչիւր առ նոսա (առ հինսն մեր), և ոչ ի ծովակս աշխարհիս նաւագնացութիւնք, և ոչ ի վերայ գետոց ճանապարհորդութիւնք։... Այս ամենայն յօ-

րինի յաւուրս Արտաշիսի» (Խոր. Բ. ԾԹ.)։ Բզնունեաց ծովուն վրայ նաւարկութիւն կայ յիշուած ի հին մատենագիրս մեր։ Բուզանդ ի պատմութեան կոտորածի ցեղին Բզնունեաց ասէ զՎաչէէ սպարապետէն Խոսրովու Կոտակայ, թէ «Զազգ նորա (Դատաբեռնայ Բզնունւոյ մատնչի) և զկին և զորդիս գտանէր յամրոցի անդ իշխանին Ռշտունեաց յանուանեալն յԱղթամար կղզւոջ. ի նաւ ելեալ Վաչէ սպարապետն, անցեալ ի կղզին՝ առհասարակ ոչ զեգ թողոյր և ոչ զարու» (Բուզ. Գ. Ը.)։

Գալով՛ սուրհանդակաց՝ եթէ չգոյին ևս կանոնաւոր սուրհանդակք, իբրև հասարակաց թղթաբերք՝ կարևոր լուրք սակայն առ թագաւորն և առ զօրավարս և ի սոցանէ առ այլս՝ կը հասնէին որչափ մարթ էր արագ օծընդակօք, զորս մերթ գուշակս կ՚անուանէ Բուզանդ, և մերթ գումկան։ Այսպէս հաւանականաբար սուրհանդակաւ կամ օծընդակաւ հասաւ Պարսից յարձակման լուրն առ Խոսրով, մինչ նա զբաղեալ էր իւր կրկին անտառները տնկելով, «զԽոսրովակերտն» և «զՏաճար մայրին»։ «Մինչդեռ նա յայնմ գործ զմայրեօքն տնկելովք էր՝ յանկարծակի գուշակ հասանէր ի Հեր և ի Զարևանդ գաւառէ, թէ պատրաստեալ են զօրքն Պարսից գալ հասանել ի գործ պատերազմի ի վերայ քո» (Բուզ. Գ. Ը.)։ Սոյն ճանապարհաւ եկաւ լուր առ Արշակ, մինչ էր նա յԱտրպատականի, թէ Պարսիկք յարձակած էին ի թիկանց կուսէ և կը քանդէին զերկիրն։ «Մինչդեռ այս ամենայն լինէր՝ գումկան հասանէր առ թագաւորն Արշակ, և ասեն նմա. Դու աւադիկ առաջոյ սպասես թըշնամեացն, նստիս յԱտրպատականի. իսկ թշնամիքն զթիկամբք անկեալ կոտորեցին զաշխարհս, և արդ դիմեալ գան ի վերայ քո» (Բուզ. Դ. ԽԴ.)։ Հաւանականապէս սուրհանդակաւ հաղորդեց Մուշեղի Մերուժան զՈւռնայրի պարծելն առ Շապուհ՝ ելանել ախոյեան Հայոց գնդին, և զՈւռնայրի գուշակութիւնն առ նոյն Մուշեղ զպատրաստութենէն Շապհոյ՝ միւս անգամ յարձակելոյ յանկարծ ի Հայս։ «Իբրև զօրահատոյց առնէր Շապուհ Պարսից թագաւորն զզօրս իւր ի վերայ աշխարհին Հայոց և ի վերայ զօրացն Յունաց՝ Ուռնայր արքայ Աղուանից անդ էր առ թագաւորին Պարսից։ Ապա յառաջ կայր և խնդրէր պարգևս Ուռնայր ի Շապհոյ, և ասէր. Կամ լիցի քեզ, արանց քաջ, զի ինձ պարգև հրաման տացես, զի Հայոց գնդին Պապայ արքային ես ինձէն ելից իմով գնդովս նահատակ։... Եւ Շապուհ թագաւորն հաճեցաւ և շնորհ կալաւ։ Բայց Մերուժանայ Արծրունւոյ պատասխանի տուեալ Ուռնայրի՝ ասաց. Ասա արկեր զգազիւ գիրկս. բայց թէ ժողովել կարիցես՝ մեծ զարմանք իցեն։ Եւ գաղտուկ խորհրդով զայս գուշակութիւն Մերուժանն ի ձեռն

Հրեշտակք առ Մուշեղ զօրավարն Հայոց հասուցանէր, թէ Գիտես և պատրաստեաց, Մուշեղ, զի մեծաւ պարծանօք պարգև խնդրեալ է զձեզ Ուռնայրք արքային Աղուանից. արդ գիտես զինչ գործիցես (Բուզ. Ե. Դ.)։ «Ապա լինէր գուշակ Մուշեղի Ուռնայր արքայ Աղուանից, յղէր առ նա հրեշտակ և տայր նմա տեղեկութիւն, ասէր. Մեծ շնորհակալութիւն ունիմ, զի ոչ սպաներ դու զիս. և Աստուած էած զիս ի ձեռս քո, և դու անխայեցեր. զայս սէր քո ոչ մոռացայց մինչև իցեմ ես։ Բայց գուշակեալ իմ քեզ, զի Շապուհ թագաւորն Պարսից ամենայն զօրօք իւրովք կազմի գալ անկանել յանպատրաստից ի վերայ քո» (Բուզ. Ե. Ե.)։ Նոյնպէս նախարարք և Գնէլ Անձևացի նոյն ճանապարհաւ կը թուի թէ իմացուցին Պապայ՝ Դղակայ մարզպետի մատնութեան խորհուրդը, և Պապ առ Դղակ՝ գալ առ նա վաղվաղակի. «Մարզպետն Դղակ, զոր թողեալ էր սահմանապահ ի Գանձակ, որ էր սահման ընդ Պարսս և ընդ Հայս՝... յղէր հրեշտակս խորհրդով առ Շապուհ, և խոստանայր մատնել ի ձեռս նորա զթագաւորն Հայոց Պապ և զզօրավարն Յունաց զՏերենտն և զզօրավարն Հայոց զՄուշեղ, և առնոյր ի նմանէ գանձս պարգևաց սաստիկ յոյժ։ Բայց այլ մեծամեծ նախարարք, որ էին առ նմա, և Գնէլն, տէր գաւառին Անձևացեաց՝ գաղտ ազդ առնէին թագաւորին Պապայ։ Ապա թագաւորն Պապ յղեաց դեսպանս առ մարզպետն Դղակ, թէ Զզօրդ որ են ընդ ձեռամբ քով՝ գումարեա զայդ, Գնելոյ Անձևացւոյ յանձն արասցես և վաղ եկեսցես. զի պիտոյ է ինձ յղել զքեզ առ թագաւորն Պարսից Շապուհ, զի ես մտից նմա ի ծառայութիւն։ Ապա իբրև լսէր մարզպետն Դղակ՝... զուարճացեալ դեսպան ձիով վաղ հասուցանէր ի գաւառն Այրարատու... առ թագաւորն Հայոց Պապ» (Բուզ. Ե. Զ.)։

**17.** Խնդիր կ՚ելլէ հոս մեր առջև, թէ թագաւորութիւն մի այսպէս բազմամասն, այնչափ և այնպիսի չհամազգի տարրներէ յօդեալ և զուգեալ, ունենալով մանաւանդ առ երի հզօր նախանձորդ ոսոխ մի, որպիսի էր սասանականն, ինչ զինուորական ամրութիւններով կը պահպանէր զիւր միութիւն։ Իբրև զինուորական ամրութիւն կրնան համարուիլ բերդք, որ մեծաւ մասամբ կը վերաբերէին թագաւորին ընդ վերակացութեամբ մարզպետաց, և որ էին արդարև երևելի կէտեր իրենց դիրքին և հաստաբեստ շինուածով, սակայն չէին բաւական ի պահել զերկիրն՝ դրացի ազգաց, մանաւանդ Պարսից ստէպ արշաւանաց աւերումներէն, շատ անգամ ևս կ՚առնուէին պաշարմամբ կամ մատնութեամբ։ Բուզանդ կը յիշէ յանուանէ ութ երևելի բերդեան, տեղիք գանձուց և շիրմաց թագաւորաց մերոց։ 1. Բնաբեղ, յերկրին Ծոփաց, զոր կը կոչէ «բերդ ար-

քունի, ուր գանձքն լեալ էին» թագաւորաց (Բուզ. Գ. ԺԲ, Ե. Է.)։ 2. Անգեղ բերդ յԱնգեղ տան, այն է ի Բարձր Հայս, «ամուր բերդ» ըստ Բուզանդայ.—«Գային պահ արկանէին (Պարսիկք) շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն, որ է յԱնգեղ տանն գաւառին. զի անդ էին բազում Հայոց թագաւորացն գերեզմանք շիրմացն արանցն Արշակունեաց. բազում գանձք մթերեալ մնացեալ կային ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ. չուան պահ արկին զբերդաւն. ապա իբրև ոչ կարէին առնուլ վասն ամրութեան տեղւոյն՝ թողուին և գնային» (Բուզ. Դ. ԻԴ.)։ 3. Անի, ի Դարանաղիս, նոյնպէս «ամուր բերդ» ըստ Բուզանդայ.—«Մատնեցաւ ի ձեռս նոցա ամուր բերդն Անի ի Դարանաղեաց գաւառին... ինչուցանէին անթիւ գանձս ի բերդէն, և բանային զգերեզմանս զառաջին թագաւորացն Հայոց, զարանց քաջաց զԱրշակունւոյ» (Բուզ. Գ. ԻԴ.)։ 4. Արտագերք կամ բերդ Արտագերից յԱրշարունիս, «կարի ամուր» ըստ նմին Բուզանդայ, ուր ապաւինեցաւ Փառանձեմ կին Արշակայ յետ կապանաց և գերութեան առն իւրոյ, և որ, ինչպէս կ'երևի՝ առնուեցաւ, վասն զի մահ անկաւ ի բերդականսն, և ստիպուեցաւ տիկինն լինել անձնատուր (Բուզ. Դ. ԻԴ.)։ 5. Դարևնից բերդ յերկրին Կովգայ, նոյնպէս «ամուր» կոչուած ի Բուզանդայ.—«Թափեաց յինքն Մուշեղ զամուր ամուր բերգէցն, զոր կալեալ էր Պարսկացն, և բերդն Դարեւնից, որ է յերկրին Կոգայ, ուր կային գանձք Արշակունեացն սաստիկ յոյժ» (Բուզ. Գ. Է, Ե. Ա.)։ 6. Ողական բերդ, որ էր ի ձեռս Մամիկոնեանց առ Արածանեաւ.—«Եւ Մուշեղ սպարապետն էր յերկրին Տարօնոյ յիւրում բերդին, որում Ողական կոչեն, որ կայ վերայ գետոյն Եփրատայ» (Բուզ. Ե. Գ.)։ 7. Օշական, յԱյրարատ, յառապարի (այն է ապառաժուտ տեղ).—«Փախեան ելին յառապարն ի կողմն Օշական բերդին» (Բուզ. Գ. Է.)։ 8. Գառնի, ի Գեղաքունի, «ամուր բերդ արքունի» ըստ Բուզանդայ.—«Առեալ յամուր բերգէն արքունի, որում կոչեն Գառնի» (Բուզ. Գ. Ը.)։ Բուզանդ ունի նաև «Վան բերդ», որով կը թուի իմանալ զանուանի քարաբլուրն վիմափոր սենեակներով, «քարանձաւ» ըստ նմին Բուզանդայ, որ և զաշտարակ նորա կը յիշէ.—«Իսկ զտիկինն Ռշտունեաց կախեցին ի միջնաբերդին Վան բերդի» (Բուզ. Դ. ԾԹ.). և այլուր (Ե. ԼԷ.), «Տարան զՀամազասպուհի յերկիրն Տոսպայ, ի քաղաքն ի Վան, և հանեալ կախեցին զնա զբարձր աշտարակացն, որ կայր ի վերայ քարանձաւին»։ Նաև Խորենացին կը յիշէ զԱնի և զԱրտագերս, ինչպէս նաև զԳառնի և զՈղական, զչորեսին ևս «ամուր» կամ «ամրոց» անուամբ։ Խորենացին կը յիշէ նաև Բայբերդ ի Սպեր, իբրև յատուկ բերդ Բագրատունեաց.—«Իսկ Սմբատ առեալ զերկուս դստերս իւր, զՍմբատանոյշ

և զՄմբատուրհի՝ նստուցանէ ի Բայբերդի, արս քաջս թողլով ի վե-րայ ամրոցին» (Խոր. Բ. Լէ.)։ Եղիշէ կ'անուանէ «անմատոյց ամուր» զԳառնի, զԱնի և զԱրտագերս, և զՈղական կը կոչէ «անկասկածե-լի», այսինքն անառիկ և ապահով.—«Անուրին զանմատոյց ամուրսն զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս,... զանկասկածելի Ողականն» (Եղիշ. էջ 117)։ Նոյն կը յիշէ բերդ Արմաւրի.—«Աւերեաց և զբերդն Արմաւրի» (Անդ, էջ 135)։ Փարպեցին կը յիշէ Բողբերդ ի Բասեն.—«Իսկ Տապհոյ տարեալ զկանայս Կամսարականացն յամուր բերդն Բասենոյ, զոր Բողբերդն կոչեն՝ թողոյր անդ» (Փարպ. Չ.)։ Փարպե-ցին կը յիշէ նաև Սագրայ բերդ, յանձանօթ գաւառին Ուրծայ.—«Եւ սեպուհ մի ուրծացի, որում անունն էր Վարազներսեհ, որդի Կողթե-կայ իշխանին Ուրծայ, որ էր յերդմանն ընդ նախարարսն Հայոց՝ նենգեալ ուխտին որքոյ... դիմեալ ամրանայր ի բերդն, որ անուա-նեալ կոչի Սագրայ բերդ, որ էր բերդ ամուր իշխանութեանն իւ-րեանց» (Փարպ. Կէ.)։ Չէ պարտ մոռանալ և զամուրն Հնարակերտ, զոր երկիցս կը յիշէ Խորենացին իբրև կարևոր բերդ, հաւանակա-նապէս ընդ ձեռամբ Հայոց, հիւսիսային սահմանին վրայ ի մէջ Վիր և Աղուան գաւառաց՝ հիւսիսային ազգաց դէմ իբրև պատուար։ Խորենացին մինչև այս ամրոցը կու տայ ժառանգել Առանայ նա-հապետին Հայ Աղուանից, և Գուշարայ նահապետին Գուգարաց կամ Հայ Վրաց.—«Կարգէ (կողմնակալ) զԱռան... որ ժառանգեաց զդաշտն Աղուանից... ի գետոյն Երասխայ մինչև ցամուրն, որ ասի Հնարա-կերտ»։ «Իսկ Գուշարայ... ժառանգեաց զլեառն մթին... մինչև ցա-մուրն Հնարակերտ» (Խոր. Բ. Ը.)։ Ցայտնի է թէ կային և այլ բա-զում բերդք, մանաւանդ յարևմտեան մասին։ Բուզանդ, յետ խօսե-լոյ զԲնաբեղ բերդէն, թէ չկարացին առնուլ Պարսիկք՝ կը յաւելու. «Ի Ծոփս մեծ արշաւեցին, և անդ էին բերդք զոր առին, և էր զոր ոչ կարացին առնուլ». և ի ստորև. «Եւ զբազում բերդօք զանց առ-նէին, զի ոչ կարէին մարտնչել ընդ ամուրսն» (Բուզ. Դ. ԻԴ.)։ Նոյն և այլ բազում ուրեք կը յիշէ «բերդեան», այսինքն՝ բերդեր ի բազմաւորականն, առանց անուանց։ Այսպէս զՊարսից ասէ, թէ «Եւ զբերդս ամենայն թագաւորին Հայոց կալան, և լցեալ բազում ամ-բարօք՝ բերդակալս թողուին» (Բուզ. Դ. ԾԵ.). և զՄուշեղէ ասէ, թէ «Թափեաց յինքն զամուր ամուր բերդեցն, զոր կալեալ էր Պարս-կաց» (Բուզ. Ե. Ա.). և այլուր (Դ. ԾԹ.), «Եւ զկանայս փախուցե-լոցն զնախարարացն տային ի բերդեանն, զի նեղեսցեն զնոսա դար-ձուցանել յօրէնս Մազդեզանց... Ապա իբրև ոչ մի ոք յանձն առ-ուրանալ ի քրիստոնէութենէն՝ չարամահ սպանանէին զամենսեան յամենայն ի բերդսն, յորս տուեալ էր զնոսա»։ Իսկ պարիսպ ունէին

ոչ մեծամեծ քաղաքներ միայն, որպիսի էր Արտաշատ, այլ և աւանք։ ԶԱրտաշատէ յայտնապէս ասէ Բուզանդ, թէ էր պարսպաւոր, զոր քանդեցին Պարսիկք.—«Ցետ այսորիկ եկին ի քաղաքն մեծ յԱրտաշատ և առին զնա, և կործանեցին զպարիսպ նորա»․ և սակաւ մի յետոյ, «Եւ զամենայն շինուած քաղաքին Հրձիգ արարին զփայտակերտն, և զքարակերտն քանդեցին, և զպարիսպն ըստ նմին օրինակի... ապականեցին» (Բուզ. Դ. ԾԵ.)։ Եղիշէ երկիցս կը շարէ կարգաւ յականէ յանուանէ քաղաքներ և աւաններ, որոց ամենքն էին ամրոց և բերդաքաղաք, «ձմերոց և կայանք» զօրաց.—«Յարձակեցան (Վարդանանք) ի վերայ բերդիցն և աւանաց, զոր ունէին Պարսիկքն ի տեղիս տեղիս, յամրոցս աշխարհին, տապալէին քանդէին։ Առաջին՝ զմեծն Արտաշատ... և առնուին զանմատոյց ամուրսն—զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս, զԵրկայնորգսն և զԱրհնին, զԲարձրաբուղն, զԽորանիստն, զԾխանիստն, զանկասկածելի Ողականն, զԱրփանեալն, զՎանն աւան, զԳռեալն և զԿապոյտքն, զՈրոտն և զՎասակաշատն» (Եղիշ. էջ 117). և զՎասակայ ասէ, թէ «Աւերեաց զքազում (ամուր) տեղիս աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի, որ կայանք զօրացն էին. զԳառնին և զԵրամայիս և զԴրասխանակերտն, զՎարդանաշատն և զամուրն Օշական, զՓառախոտն, զՍարգեանսն, զՑոլակերտն աւան և զբերդն Արմաւրի, զԿուաշն աւան, զԱրուճն, զԱշնակն և զամենայն ոտն Արագածու, և զնահանգն Արտաշատու և զԱրտաշատն ինքնին գլխովին» (Եղիշ. էջ 135)։

**18.** Թող այս ամրութիւններն՝ միւս ևս մեծ ամրութիւն կըրնային համարուիլ սահմանագլուխ իշխանութիւնք, որ ըստ Խորենացւոյն որպէս թէ դրուած էին ի վաղուց՝ ի պահել երկրին սահմանները։ Այսպիսի էին մանաւանդ չորեքին բդեշխութիւնք, որոց Ագաթանգեղոս կու տայ «սահմանակալ» անունը.—«Առնոյր ընդ իւր (Տրդատ) ի զինուորական կողմանէն զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին, որ բդեաշխքն կոչէին. զառաջին սահմանակալն ի Նորշիրական կողմանէն, և երկրորդ սահմանակալն յԱսորեստանեաց կողմանէն, և երրորդն՝ յԱրուեստական կողմանէն, չորրորդն՝ ի Մասքթաց կողմանէն» (Ագաթ. ԾԻԶ.), իշխանութիւններ, զորոց հաստատութիւնն, մանաւանդ արևելեան և հարաւային կողմանն՝ Խորենացին կը հանէ մինչև ցԱրամ իւր, կամ մինչև ի Հայկ, և որոց, ըստ նոյն պատմագրին՝ Վաղարշակ տուաւ վերջին ձևը։ Այսպէս որպէս թէ Հայկ, յետ պատերազմին իւրոյ ընդ Բելայ՝ «Կադմեայ թոռին իւրում հրամայէ զնոյն տեղի բնակութեան ունել զառաջնոյ իւրոյ տանն», իբրև արևելեան սահմանապահ, և «ինքն երթեալ (յարևմուտս

կոյս) դադարէ յանուանեալ տեղին Հարք» (Խոր. Ա. ԺԲ.)։ Իսկ Արամ որպէս թէ «նուաճեալ զարեւելեայն և զհարաւայինն և ի ձեռն յանձնեալ երկուց ցեղից, Սիսակեանց՝ զարեւելս, և ի Կադմեայ տանէն՝ զԱսորեստանին (զհարաւայինն)՝ ոչինչ այնուհետև կասկած շփոթից ունէր» (Խոր. Ա. ԺԳ.)։ Սահմանագլուխ իշխանութիւնք լինին որոշ և կատարեալ, ըստ Խորենացւոյն, առ Վաղարշակաւ, որ արեւելեան սահմանը կը յանձնէ Սիսակեանց և Կադմեանց.—«Յարեւելից կողմանէ զեզերբ հայկական խօսից (կարգէ) կողմնակալս զերկուց ցեղից նահապետութիւնսն, Սիսակեան և Կադմեայն» (Խոր. Բ. Ը.)։ Հիւսիսային արեւելեան սահմանը կը յանձնէ Առանայ (Հայ Աղուանից).—«Զարեւելից հիւսիսոյ կողմանն կարգէ կողմնակալութիւն զԱռան, որ ժառանգեաց զդաշտն Աղուանից» (Անդ)։ Հիւսիսային սահմանը կը յանձնէ Գուգարաց (Հայ Վրաց) նահապետին՝ բդեշխ անուամբ.—«Իսկ ընդդէմ լերինն Կովկասու կողմնակալ հիւսիսոյ կարգէ զմեծ և զհզօր ազգն (Գուգարաց), և նահապետութեանն անուն կարդայ բդեշխ Գուգարացւոց» (Անդ)։ Արեւմտից սահմանը կը յանձնէ Անգեղ տան.—«Իսկ զայր խոժոռագեղ և բարձր, կոպտաբանձն և տափաքիթ, Տորք՝ հաստատէ կուսակալ արեւմտից, և յերեսացն անպիտանութենէ կոչէ զանուն ազգին Անգեղ տուն» (Անդ)։ Հարաւային սահմանը կը յանձնէ Աղձնեաց.—«Զճարաշան ի տանէ Սանասարայ հաստատէ բդեշխ մեծ և կուսակալ յարեւմտից հարաւոյ յեզերս սահմանացն Ասորեստանի (կամի ասել՝ Ասորւոց)» (Անդ)։ Բայց ինչ որ յանուն Հայկայ, Արամայ, նաև Վաղարշակայ կը պատմուի առ Խորենացւոյն՝ չէ պատմական, կամ է գէթ երկբայելի։ Բդեաշխք ունէին արքայական ճոխութիւն իբրև երկրորդ զկնի թագաւորին։ Բուզանդ կը կոչէ զնոսա «գահերէց, բարձերէց» թագաւորին։ Բդեշխութեանց, իբրև սահմանագլուխ իշխանութեան սկիզբը գտնելու համար՝ հարկ չէ երթալ այնչափ հեռաւոր և անստոյգ ժամանակներ, որպիսի են Հայկայն, Արամայն և Վաղարշակայն։ Բդեշխ բառը կը նշանակէ տէր աշխարհի, այսինքն երկրի մը իշխան։ Հաւանական է, թէ երբ Արտաքսիաս և Զարիադրէս, կուսակալք Սելեկեանց, լինելով զառաջինն ինքնագլուխ, մին՝ Արարատայ, և միւսն՝ Ծոփաց, սկսան ընդարձակել իրենց իշխանութիւնն, ինչպէս կը պատմէ Ստրաբոն՝ հիւսիսային, արեւելեան և հարաւային դրացի երկիրներէ գաւառներ գրաւելով՝ այն գաւառաց իշխաններուն տուին հին հայերէն բդեշխ անունը (յունարէն բառով τόπαρχος, իշխան երկրի), ընելով զնոսա ինքնօրէնս և տալով պատիւ լինելոյ բարձակից թագաւորին։ Ուստի բդեշխութեան սկիզբը չերթար յառաջ քան զժամանակն Արտաքսիասայ, կամ յառաջ քան զերկրորդ Հարստու-

թիւնն Հայոց, զԱրշակունիս։ Բդեշխք, ինչպէս ուրիշ սահմանագլուխ իշխանք, իբրև ի բնէ օտարք՝ էին մէտ յապստամբութիւն։ Առ Խոսրովաւ որդւով Տրդատայ՝ Աղձնիք, առ Արշակաւ Թոռամբ նորա գրեթէ բոլոր սահմանագլուխ գաւառք, այն է՝ Նորշիրականն, Կորդուք, Մարք (մարական գաւառք), Արձախ, Աղուանք (Աղուան գաւառք), Կասպք, Վիրք (Վրական գաւառք), Աղձնիք, Ծոփք, Անգեղ տունն, Անձիտ՝ ապստամբեցան, թէպէտ, եթէ ստոյգ է պատմութիւնն Բուզանդայ՝ նուաճեցան յետոյ առ Պապաւ ի ձեռն Մուշեղի։ Բուզանդայ Դ. դպրութեան Ծ. գլուխն կը պատմէ սահմանագլուխ գաւառաց այս ընդհանուր ապստամբութիւնն, ինչպէս Ը-էն մինչև ԺԹ. գլուխք Ե. դպրութեան կը պատմեն զնուաճել նոցա։ Բուզանդ յայտնապէս ասէ զԽոսրովայ, թէ չէր վստահ ի բազումս ի նախարարաց իւրոց.—«Ունէր արքայ օրէնս, զի մեծամեծաւագանին, նախարարքն, աշխարհակալքն, աշխարհատեարքն, որ էին բիւրաւորքն և հազարաւորքն՝ կայցեն առ արքային և ընդ նմա շրջեսցին, և մի՛ ոք երթիցէ ի նոցանէ ընդ զօրս արքունի, զի երկնչէր նա յերկմտութենէ նոցա։... Բայց վստահ լինէր ի ծերունին Վաչէ, ի բուն սպարապետն ի զօրավարն Հայոց մեծաց, և ի քաջն Վահան Ամատունի» (Բուզ. Գ. Ը.)։

**19.** Ապա գլխաւոր զօրութիւն ի պաշտպանութիւն երկրին՝ չէին ոչ բդեշխքն և ոչ սահմանագլուխ իշխանութիւնք։ Զմիութիւն և զանկախութիւն երկրին պահող զօրութիւնն էր զօրքը։ Խնդիր է սակայն, թէ ո՛րչափ էր ընդհանրապէս Հայոց զինուորական զօրութիւնն, և թէ կա՞յր արդեօք զինուորագրութեան օրէնք։ Չթուիր թէ կար կանոնաւոր զինուորագրութիւն և որոշ պայման և ժամանակ զինուորական ծառայութեան։ Զինուորութիւնն էր ի բնէ իրաւունք և պարտք ժողովրդեան ազատ կոչուած մասին, այն է՝ նախարարական տոհմերուն, և զայս կը թուի նշանակել «սեպուհ» անունն, որ կը տրուէր այն տոհմերուն տղանց, որք և էին միշտ զէն ի ձեռին պատրաստ, ուստի և ունիմք ստէպ առ Բուզանդայ և առ այլս՝ «նախարարակոյտ զօրք», «ազատագունդ բանակ», այլովքն հանդերձ։ Ի հարկին կայր սակայն զօրս ժողովել և վառել զինու և թոշակաւ, մանաւանդ ժողովրդեան դատարկ և սինլքոր մասէն, որ չէին զբաղեալ շինականութեան գործով, այսինքն արուեստիւ իւիք և կամ մշակութեամբ։ Այսպիսեաց կու տայ Բուզանդ «գուգազ» անունը.—«Ապա հրաման ետ արքայ Խոսրով Դատաբայ նահապետի Բզնունեաց՝ գուգազ հանել յաշխարհէ աւելի քան զչափն, և զհամար զօրուն (այն է՝ կանոնաւոր զօրքը) մատենի գնդաւն ընդ առաջ նոցա խաղալ» (Բուզ. Գ. Ը.)։ Ի սոցանէ էր սպասաւորող մասն բանակին,

զօր Բուզանդ կամի յայտ առնել «ռահվիրայ, խառնաղանջ, խորանապահ, ռամիկսպաս» բառերով.—«Եւ ոչ ոք էր, որ մնացեալ էր առ թագաւորին, և ոչ գունդ և այրուձի, բայց միայն սակաւ սպասաւորօք հանդերձ... և ռահվիրայ մարդկաւն, և խառնաղանջ խորանապահ զօրաւն, և ռամիկսպաս զօրօքն» (Բուզ. Գ. Ի.)։ Զօրաժողով սահպ կը յիշուի առ Բուզանդայ, թէպէտ ոչ զինուորագրութիւն ըստ օրինի։ Այսպէս զՎասակայ ասի. «Ապա զօրաժողով լինէր Վասակ զօրավարն Հայոց, և որ հասին ի ժամանակի անդ ի ձեռըն նորա՝ տասն հազար հեծեալ ընտիր ընտիր և քաջ այրուձի, կազմ զինու և բազում պատրաստութեամբ» (Բուզ. Դ. ԻԳ.). և ի ստորև, «Իբրև զգացին զօրավարքն զօրաց թագաւորին Պարսից, եթէ զօրաժողով է ի վերայ նոցա զօրավարն Հայոց Վասակ» ևն։ Դարձեալ ասի նոյն Վասակայ համար (Դ. ԻԲ.). «Ապա հրաման տայր թագաւորն Պարսից զօրացն՝ ընդ երիս տեղիս խաղալ մտանել արշաւել յաշխարհն Հայոց։ Ապա այս բանք վաղագոյն ազդ լինէին առ թագաւորն Հայոց Արշակ և առ զօրավարն նորին Վասակ. ապա և սոքա բազում զօր յաշխարհէ ժողովեցին»։ Եւ զՄուշեղէ ասէ ի գալստեանն Պապայ ի Հայս. «Ապա Մուշեղ որդի Վասակայ, սպարապետն Հայոց մեծաց, ընտրեաց իւր արս ընտիրս քառասուն հազար, և կազմեաց զնոսա ձիով և թռշակաւ և զինու» (Բուզ. Ե. Բ)։ Յայտ է, թէ թոշակաւ պարտ է իմանալ ռոճիկ և պարէն, և ոչ արծաթոյ վարձս։

Գալով զինուորական զօրութեան Հայոց՝ կը թուի թէ թագաւորք մեր, մանաւանդ ի սկզբան, կը կանչէին զօրս յօգնականութիւն բարբարոս ազգերէ վարձկանութեամբ կամ յուսով աւարի։ Այսպէս Խորենացին ասէ զԱրտաւազդայ Ա-ոյ, թէ «Զայրացեալ հրաման տայր զօր յարուցանել զթիւրաւորս Ատրպատական նահանգին և զընակիչս լերինն Կովկասու հանդերձ Աղուանիւք և Վրօք. խաղայ իջանէ ի Միջագետս, և հալածական առնէ զզօրս Հռոմայեցւոց» (Խոր. Բ. ԻԲ.)։ Ագաթանգեղոս ասէ զմեծէն Խոսրովայ. «Սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց գունդ կազմել և զօրս բովանդակել, գումարել զզօրս Աղուանից և Վրաց, և բանալ զդրունս Ալանաց, հանել զզօրս Հոնաց, ասպատակ գնել ի կողմանս Պարսից։... Վաղվաղակի ի թիկունս հասանէին մեծաւ բազմութեամբ ժիր և քաջ առն և ձիոյ և բուռն կազմութեամբ՝ Աղուանք, Լփինք և Ճիղպք, Կասպք և այլ ևս որ ի սմին կողմանց» (Ագաթ. Ա.)։ Ի նմանէ առեալ Խորենացին—«Սակայն Խոսրով զօրօք իւրովք և այլ սիրելեօք յարեցելովք լինքն և հիւսիսային ազգօք՝ Արտաշրի յաղթեաց, հալածական առնելով մինչև յաշխարհն Հնդկաց» (Խոր. Բ. ՀԳ.)։

Աստ ուրեմն և զՎասակայ սպարապետէն Արշակայ ասի, թէ «Առնոյր զգունդն Հայոց, և զՀոնսն հանդերձ Ալանօքն կոչէր յօգնականութիւն, և հասանէր դիմէր յօգնականութիւն Հայոց ի վերայ Պարսից» (Բուզ. Դ. ԻԵ.)։

Այլ զբուն զօրաց Հայոց դժուարին է ասել որոշ ինչ։ Ի թուոյ զօրուն Վարդանանց, որ ըստ Եղիշէի էր վաթսուն և վեց հազար՝ յայտնի է թէ ամբողջ թիւ զօրուն Հայոց, գէթ յայնժամ, չկարէր լինել աւելի քան 120,000, քանզի գրեթէ կէս ազգին միայն էր ընդ Վարդանայ։ Բայց նաև ուրիշ ժամանակներ, մինչդեռ կանգուն էր թագաւորութիւնն՝ քան զայս շատ աւելի եղած չերևիր թիւ բնիկ զօրուն Հայոց։ Այս 120 հազարէն քառասուն հազարն միայն կը թուի թէ կը վերաբերէր Արշակունի ցեղին և կը կազմէր զբանակն արքունի։ Բուզանդ, որ սովոր է ստուարացունել զօրաց թիւն, ուր զզօրաց թշնամւոյ են բանք, մինչև ի չորս կամ հինգ հարիւր հազար, երբեմն յևս իմն աւելի հանել զզօրս Պարսից եկեալս ի վերայ Հայոց՝ ի խօսելն զզօրաց Հայոց՝ ընդհանրապէս քան զքառասուն հազարն ի վեր չհանէր զօրաց թիւն յայլևայլ պատերազմունս։ «Ապա գայր հասանէր Վահրիճ չորեքհարիւր բիւրու առաքեալ ի Շապհոյ արքայէն ի վերայ Հայաստան աշխարհին...։ Քառասուն հազարաւ ելանէր Վասակ ընդդէմ նոցա, սպանանէր զՎահրիճն և կոտորէր զզօրսն Պարսից» (Բուզ. Դ. Լ.)։ Այսպէս և Մուշեղ, ըստ նոյն պատմագրի, քառասուն հազարաւ եհար Շապհոյ ամբողջ բանակն յԱտրպատականի.—«Ապա Մուշեղ որդի Վասակայ, սպարապետն Հայոց մեծաց, ընտրեաց իւր արս ընտիրս, միամիտս, ազատս, ազգայինս՝ քառասուն հազար, միաբանս, միակամս, և կազմեաց զնոսա ձիով և թօշակաւ և զինու, երթալ նստել ի սահմանս Ատրպաճացն և պահել զաշխարհն Հայոց։ Ապա յայնմ ժամանակի կազմեաց պատրաստեաց Շապուհ արքայ Պարսից ամենայն կազմութեամբ զօրովք իւրովք, եկն եհաս յերկիրն Ատրպայականի։... Եւ հասանէր սպարապետն զօրավարն Հայոց Մուշեղ, անկանէր ի վերայ բանակին (Պարսից) քառասուն հազարաւ» (Բուզ. Ե. Բ.)։ Քառասուն հազար կը թուի թէ էր զօրքն առ Դատաբայ նահապետին Բզնունեաց, զոր Խոսրով Կոտակ յղեց ի վերայ Պարսից։ «Յանկարծակի գուշակ հասանէր առ Խոսրով ի Հէր և ի Զարաւանդ գաւառէ, թէ պատրաստեալ են զօրքն Պարսից գալ հասանել ի գործ պատերազմի ի վերայ քո։ Ապա հրաման ետ արքայ Խոսրով Դատաբայ նահապետի Բզնունեաց... ընդ առաջ նոցա խաղալ։... Իբրև հասանէր Դատաբէն՝ խորհուրդ միաբանութեան դնէր ընդ իշխանսն զօրացն Պարսից. կամեցաւ մատնել ի ձեռս նոցա զարքայն Հայոց

զտէրն իւր. դարան հրամայեաց գործել թշնամեացն ի վերայ իւրոց զօրացն... յանկարծ յեղակարծումն քառասուն հազար զօրսն Հայոց միանգամայն կոտորէին,... և Դատաբէն չարագործ առնոյր զզօրսն Պարսից և կամէր անկանել ի վերայ թագաւորին Հայոց» (Բուզ. Գ. Ը.): Մի անգամ կը յիշէ Բուզանդ եօթանասուն հազար, հաւանականապէս հանդերձ նախարարակոյտ զօրօք, ընդ ձեռամբ նորին Վասակայ.—«Եւ զԴեհկան նահապետ, որ տոհմիկ իսկ էր ազգաւ տոհմին զօրավարացն Հայոց, այսինքն Մամիկոնենից՝ առաքէր թագաւորն Պարսից Շապուհ յերկիրն Հայոց ի վերայ Արշակայ արքային Հայոց... և զհայացիսն ոչինչ թուլացեալ ի քուն գտանէր... Եւ զօրավարն Վասակ ելանէր ընդ առաջ նոցա եւթանասուն հազարաւ, հարկանէր սատակէր զզօրսն Պարսից, սպանանէր զիւր զազգային զԴեհկան նահապետն, և զմնացեալսն առաջի իւր տանէր փախստական ձիահալածք արարեալք» (Բուզ. Դ. ԼԲ.): Առ Պապաւ, մինչ Յոյնք օգնական էին Հայոց՝ կը յիշուի իննսուն հազար.—«Ապա յետ այսորիկ թագաւորն Պարսից զամենայն զօրացն զբազմութիւն առաքէր ի վերայ թագաւորին Պապայ ի պատերազմ... և զօրավարն Հայոց Մուշեղ ժողովէր զամենայն զզօրսն Հայոց աւելի ևս քան զինսուն հազար» (Բուզ. Ե. Դ.): Նոյնպէս յերկրորդ կռուին. «Ապա ստրատն Յունաց կազմեաց զզօրս իւր... սոյնպէս և Մուշեղ սպարապետն գումարեաց ի մի վայր զզօրսն ամենայն Հայոց, և էին կուռ վառեալ իննսուն հազարք ընտիրք, նիզակ ի ձեռն, թող զսպարակիրս» (Բուզ. Ե. Ե.): Այս օրինակներուն մէջ, ինչպէս յայտնի է՝ համօրէն հայ զօրաց համար է խօսքը, և ոչ արքունի բանակին:

Թերևս Բուզանդ խորհրդով կը ստուարացունէ Պարսից զօրաց թիւը և զՀայոցն կը փոքրկացունէ ի նշան քաջութեան այս վերջնոց, որ սակաւուք կարող էին զդէմ ունել այնչափ անչափ բազմութեան: Հաւանական կը թուի սակայն, թէ բոլոր Հայ զօրաց թիւն, ի միասին հաշուելով նաև զզօրսն նախարարաց, որպէս ասացաք՝ չէր անցներ հարիւր քսան հազարը, իսկ Արշակունեացը միայն՝ ոչ աւելի քան զքառասուն հազար: Զայս կը թուի հաստատել հին ինչ աւանդութիւն առ Քսենոփոնի, որ կը պատմէ, թէ երբ Կիւրոս հարցուց Հայոց թագաւորին իւրում դաշնակցին, թէ որչափ էր զօրութիւնն Հայոց՝ թագաւորը պատասխանեց. ութ հազար հեծեալ և քառասուն հազար հետևակ:—«Կիւրոս ասէ. Լեր ցոյց ինձ, քանի՛ զօրութիւն իցէ քո աստ: Ասէ թագաւորն Հայոց. Ութ հազար հեծեալք են և հետևակք չորք բիւրք» (Քսեն. Խրատ Կիւր. Գ. Ա.): Կը յիշուին ուրեք առ Բուզանդայ նաև «վաթսուն բիւր», «չորեքհարիւր հազար».—«Ապա տայր հրաման թագաւորն

Արշակ (ի խաղալն ի վերայ Յունաց իբրև նիզակակից Շապհոյ) Վասակայ իւրում սպարապետին՝ գունդ գումարել, զօրս պատրաստել։ Եւ նա վաղվաղակի կատարէր զհրամանս թագաւորին. չորեքհարիւր հազար զօր կուռ վառեալք, որ ընտիրք և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստաց նահատակութեանն» (Բուզ. Դ. Ի.)։ Եւ յետ դաշանցն Յովհանու կայսեր ընդ Շապհոյ, իբրև ձեռնթափ եղան Յոյնք ի Հայոց, և Շապուհ կը պատրաստուէր գալ նուաճել խսպառ զՀայս՝ «Ապա արագ, ասէ Բուզանդ, ժողովեալ ի մի վայր՝ հանդէս առնէր Վասակ սպարապետն ամենայն զօրաց Հայոց, և գտան հեծելազօր սպառազէնք կուռ վառեալք նիզակաւորք համակ վաթսուն բիւր, միասիրտք, միաբան, միամիտք» (Բուզ. Դ. ԻԱ.)։ Յայտնի է սակայն, թէ այս թիւք չափազանց են. հաւանականագոյն այն է, թէ Հայք միշտ ստակաւուք պահեցին զերկիրն ի ձեռն քաջ սպարապետաց իւրեանց, մանաւանդ քաջացն Մամիկոնենից։ Բուզանդ ասէ զՄուշեղէ այսպէս. «Այլ քաջն զօրավարն սպարապետն Հայոց լի էր քինիւ մեծաւ և բազում նախանձու զամենայն աւուրս կենաց իւրոց, և միամտութեամբ և արգար վաստակով ջանայր հանապազ և վաստակէր ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին։ Զտիւ և զգիշեր կայր յաշխատութեանն. ջանայր և ճգնէր կալ ի ճակատու պատերազմին, և ոչ թողոյր բնաւ ամենևին և ոչ քան զկորի մի գետին ի սահմանաց երկրին Հայոց ուրեք վտարել. ի վերայ աշխարհին կեալ և մեռանել, ի վերայ տնուանն քաջութեան, ի վերայ բնակ տերանց և ի վերայ բնակչաց աշխարհին, ի վերայ քրիստոնէութեանն հաւատոյ, ի վերայ հաւատացեալ՝ յԱստուած և ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց, ի վերայ եկեղեցեաց և ի վերայ նուիրեալ սպասուց, ի վերայ վկայարանացն Քրիստոսի, ի վերայ ուխտի Աստուծոյ, ի վերայ քերց և եղբարց, ի վերայ մերձաւորաց տոհմին, ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց. հանապազ կայր զօրավարն Մուշեղ ի նահատակութեան պատերազմին, զանձն փոխանակ առնել աշխարհին, և յանձն իւր անխայէր ի մեռանել, զամենայն աւուրս կենաց իւրոց առաջի իւրոց բնակ տերանցն Արշակունեաց վաստակէր» (Բուզ. Ե. Ի.)։

**20.** Արդարև, նայելով սոյա յարձակմանց, զորս կը կրէին Հայք մանաւանդ ի Սասանեանց,—(ոխերիմ թշնամեաց և՛ Արշակունեաց, զորս, իբրև պահլաւ հարստութիւն՝ կը համարէին նոքա իւրեանց ոսոխս, և՛ քրիստոնէութեան, որ հզօրագոյն կապն էր Հայոց ընդ Յունաց)—դժուարին էր խաղացուցանել այնչափ զօրս յաճախ այսր անդր այնպիսի երկրի մէջ, որ լի էր լերամբք, խորաձորովք և գետովք մեծամեծօք և փոքումբք. բարերախտութեամբ նոյն

դժուարութիւնն ունէին սակայն նաև թշնամիք։ Ուստի Մուշեղ, թերևս խրատեալ ի Յունաց՝ խորհեցաւ այլ իմն հնարս յամրութիւն աշխարհին յերեսաց Պարսից և ունել զառաջս այն դժուարութեանց, այն է շինել զօրանիստ քաղաքներ մէն մի կամ երկուս յիւրաքանչիւր գաւառս, և զինուորել զազատս Հայոց արքունի թոշակաւ, որում թուի թէ կամէին նպաստել նաև Յոյնք։ «Եւ սպարապետն Հայոց Մուշեղ, ասէ Բուզանդ,... հոգայր հանապազ վասն թագաւորութեան աշխարհին Հայոց, թէ զիարդ կամ որպէս չէն լինել մարթասցէ, և հանապազ երկս արկանէր բարեխորհուրդն, զի հաստատուն կալ կարասցէ թագաւորութիւնն։ Խորհէր եւս ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք մի շինել յերկրին Հայոց ի մի մի գաւառսն, որ մին մի քաղաքս, որ երկուս երկուս, ամուր պարսպաւորս. զօրանիստս հաստատել ընդ ամենայն երկիրն Հայոց մինչև ի Գանձակ սահման երկիրն, որ Պարսից կուսէ էր, Հայոց սահման էր. և զամենայն ազատսրն Հայոց կայսերական թոշակօքն զինուորել, զի այսպէս ամենայն զգուշութիւն լիցի առ ի թշնամեաց իւրեանց, ի զօրացն Պարսից։ Եւ թագաւորն Յունաց յանձին ունէր մեծաւ խնդութեամբ առնել զայս. զի այսու ամենայնիւ աշխարհն հաստատուն լիցի և անշարժ, զի մի կարասցէ թագաւորն Պարսից յիւր վտարել զաշխարհն Հայոց» (Բուզ. Ե. ԼԴ.)։ Սակայն ամբաստանուեցաւ քաջ զօրավարն ի չարախօսաց, որպէս թէ կամէր կայսեր մատնել զերկիրն, և սպանուեցաւ չարաչար ի խնդրոյ հրամանաւ մանկաբարոյ թագաւորին Վարազդատայ։ Բուզանդ մանր և գեղեցիկ կը պատմէ զայս եղերելի պատահար։ «Իբրև տեսանէին զթագաւորն Հայոց Վարազդատ մեծ նախարարքն Հայոց, թէ մանուկ բանսերթուկ է, զչար ի բարոյ որոշել չգիտէ՝ սկսան այնուհետև ըստ կամաց իւրեանց վարել զթագաւորն. որպէս և կամէին՝ բանիւք իւրեանց տանէին և բերէին զնա։ Նա առաւել ունկն դնէր մանկտոյն, որ ի տիոց հասակակիցք էին նորա՝ առաւել քան զծերոցն իմաստնոց, որք կարող էին զօգտակար խրատն մատուցանել նմա։ Այլ Բատ, որ նահապետն էր ազգին Սահառունեաց տոհմին, դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ՝ կամեցաւ նա զգործ զօրավարութեան սպարապետութեանն Մուշեղայ յինքն յափշտակել ի նմանէ։ Վասն այսորիկ սկըսաւ քսու մատուցանել զնմանէ առ թագաւորին Վարազդատայ առ իւրում սանուն և ասել, թէ Ի սկզբան ի նախնեացն հետէ զձեր Արշակունեաց տոհմին՝ Մամիկոնէից է կորուսեալ, զի հակառակորդք ձեր դոքա լեալ էին ի բնէ անտի, և համակ զերկիրս Հայոց դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի, զի այր չար է և նենգաւոր։ Զի սե-

րելի է թշնամեաց ձերոց և ատելի սիրելեաց ձերոց, և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութեամբ և դժխեմութեամբ։ Ո՞չ այն Մուշեղ է, որ ի թագաւորութեան ժամանակ Պապայ ի պատերազմունսն Պարսից քանիցս անգամ ձեռնհաս եղև սպանանել զՇապուհ արքային Պարսից, և ոչ եսպան, այլ արձակեաց զթշնամին, և երբեմն զկանայս Շապհոյ թագաւորին ի բուռն էարկ, և խնամոտ գթով ժանուարօք արձակեաց զնոսա զհետ Շապհոյ։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, որ զՈւռնայր արքայ Աղուանից ի բուռն էարկ, և սպանանել ոչ կամեցաւ, այլ արձակեաց զթշնամին։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, զի զարքայն Պապ հրամանաւ և դորին խորհրդովդ զօրավարքն Յունաց սպանին, զի դա ոխացոյց և գրգռեաց զարքայն Յունաց ի վերայ թագաւորին Պապայ՝ մինչև եա սպանանել։ Այլ արժան է մեռանել ի ձեռաց քոց, և չէ պարտ կեալ դմա։ Այլ թէ ոչ աճապարեսցես, արքայ, այժմ զհայ երկիրս խորհի լնուլ քաղաքօք, և զօրանիստ առնէ ատ բնակութեան զօրացն Յունաց։ Եւ այնուհետև կամ թագաւորն Յունաց հանէ ի քէն զթագաւորութիւնս Հայոց, կամ այս Մուշեղ սպանանէ (զքեզ) և ինքն թագաւորէ։ Եւ այսպիսի բանիւք գաղտնի հանապազ զթագաւորն գրգռէին, մինչև հաւանեցաւ ըստ կամաց նոցա զսպարապետն զզօրավարն Հայոց սպանանել։ Ապա խորհուրդ արարին, թէ որպէս ըմբռնել կարասցեն զնա, քանզի մեծապէս երկնչէին ի նմանէն։ Թէ զգայ՝ ասեն, մեծ պատերազմ առնէ, և ոչ ոք կարէ զդէմ քաջութեան նորա ունել, բայց հնարիւք մեքենաւորութեամբ ինչ լինիցի հնար։ Այսպէս սպասէին նմա։ Եւ եղև յաւուր միոջ հրաման ետ Վարազդատ արքայ Հայոց ընթրիս մեծ գործել և մեծ պատրաստութիւն առնել. և կոչել հրամայեաց յընթրիսն զամենայն աւագս պատուականս և զմեծամեծս, և զզօրավարն Մուշեղ։ Պատրաստեաց Վարազդատ արս ընտիրս հզօրս, զօրեղք, զի կազմ կայցեն գործոյն, հարկանել յանկարծօրէն յանպատրաստից յեղակարծումն ժամու ի վերայ Մուշեղի։ Զնոսա քաջ ուրախ առնէր մեծապէս, և շատ գինի տայր ըմպել և բազում առնէր զբօսումն ուրախութեան։ Արքայն Վարազդատ տայր նշանս յառաջագոյն այնոցիկ, զոր էր սպանողն պատրաստեալ, եթէ յորժամ գիտիցէք, թէ քաջ արբեալ իցէ և զմտօք զառանցեալ յարբեցութենէ սպարապետն Մուշեղ՝ ես յարուցեալ իբրև ի ճեմիշն երթալոյ պատճառաւ, և դուք պատեսջիք զնովաւ։ Եւ եղև իբրև անցին զառանցին ի գինւոյն՝ ըստ չափ անցանելով, և թագաւորն Վարազդատ պահէր զանձրն ի գինւոյն. իբրև գիտաց Վարազդատ, թէ արդ յարբեցութենէ մտաց ինչ չզգան՝ ինքն յարուցեալ իբրև յապարահէ զանց առնե-

լոյ պատճառաւ, և աւագանիքն ամենայն բազմականացն յոտն կացին առ հասարակ, իբրև նմա պատիւ ինչ առնել։ Եւ յանկարծ ա՛րքն, որոց էր տուեալ հրաման՝ երկոտասան այր կէս կէս զոյգ զկնի կողմանէ զնմանէ բուռն հարկանէին, վեց այր ի մի բազուկն Մուշեղի, և վեց այր ի միւս բազուկն։ Եւ ընդ առն կալ թագաւորին՝ նայեցեալ ընդ նա, եթէ այս ընդէ՞ր է, և թագաւորին պատասխանի տուեալ ասէ. Ե՛րթ առ Պապ արքայ, հա՛րց և տես, թէ ընդէ՛ր է այդ, և թագաւորն ի դուրս կոյս գնացեալ ելանէր։ Եւ ասէ Մուշեղ. Ի վերայ բազում իմոց վաստակոցն արեան և քրտան, և սլաքօքն զքիրտն ջնջելոյ, ա՛յս հատուցումն եղև ինձ։ Բայց իբրև եհաս ինձ մահս՝ թէ ի վերայ ձիոյ դիպեալ էր...։ Զայս միայն բանս ժամանեաց ասել, և այլ ոչ ինչ ոչ։ Եւ անդէն Բատ Սահառունի զնրանն, զոր յիւրում ազդերն ունէր՝ հանեալ, անցոյց ընդ փողս զօրավարին Մուշեղի, և անդէն ի բաց եհատ զգլուխ նորա» (Բուզ. Ե. ԼԵ.)։ Այսպէս ի դերև ելաւ խորհուրդն ամրացուցանելոյ զերկիրն։

**21.** Ոչինչ ընդհատ քաջութեամբ պահեց զերկիրն նաև Մանուէլ եղբայր Մուշեղի։ «Ամենայն երկիրն, ասէ Բուզանդ, ի խաղաղութեան էր ընդ հովանեաւն Մանուէլի զամենայն աւուրս կենաց նորա. ամենայն մարդիկ երկրին Հայոց վայելէին յաւուրս իւրեանց, ուտէին և ըմպէին և ուրախ լինէին մինչև ի բաժանումն երկրին Հայոց և ի քակտումն թագաւորութեանն» (Բուզ. Ե. ԽԲ.)։ Յետ մահուան Մանուէլի եղաւ այս քակտումն, այլ սկիզբն, եթէ միտ դնենք պատմութեան Բուզանդայ՝ անդստին Արշակայ ժամանակէն է ի պատճառս ստէպ պատերազմաց, որ լուծին լքին զազգըն և եղան պատճառ անկման սահմանագլուխ գաւառաց։ Ահա բանք Բուզանդայ. «Զերեսուն և զչորս ամս ետուն պատերազմ երկիրս Հայոց ընդ թագաւորին Պարսից, և յետ այնորիկ ձանձրացան պարտեցան լքան աշխատեցան երկոքին կողմանքն։ Եւ սկսան սորսորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին. թողին զիւրեանց արքայն Արշակ։ Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին. նախ բդեաշխն Աղձնեաց և Նորշիրական բդեաշխն, և Մահկեր տանն, և Նիհորականն և Դասընտրէին, և ամենայն Նախարարութիւն Աղձնեաց, և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ, և չոգան կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ. և պարխսպ ածին ի Հայոց կուսէ որ Զօրայն կոչեն. դրունս դնէին և զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց։ Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, և յետ սորա Զօրայ գաւառին տէրն, և Կողբայ գաւառին տէրն, և ընդ նոսա Գարգմա-

Նախձորոյ տէրն։ Եւ որք մօտ էին ի նոսա կողմն այնր ձեռին (այսինքն՝ այն գաւառաց որ էին աւատ), որ շուրջ էին զնոքօք՝ միահաղոյն ապստամբեցին ի թագաւորէն Հայոց Արշակայ, և չոգան գնացին առաջի կացին թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ, և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդեաց. ապա և տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից։ Յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հայոց և ցեղն իշխանութեան (աւատային) տունն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն. յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց, յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից. եթող զարքայն Հայոց և գնաց Սաղամուտ տէրն Անձտեայ, և ընդ նմա իշխանն մեծի Ծոփաց, և գնացին առ թագաւորն Յունաց։ Միջնաշխարհն (և) մնացեալքն յերկուացան յարքայէն, և ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց, ոչ մի ինչ իբրս զոր նա կամէր։ Եւ գձձեցաւ թագաւորութիւնն մեծապէս» (Բուզ. Դ. Ծ.)։ Եւ թէպէտ յետ թագաւորելոյն Պապայ Մուշեղ սպարապետ հնազանդեցուց առ ժամանակ մի ապստամբ գաւառներն՝ նորոգումն այն կը թուի թէ չտեւեց ընդ երկար։ Մօտ ի բաժանումն թագաւորութեանն, մինչ Արշակ վերջին ի բաժնին Յունաց, և Խոսրով վերջին ի բաժնին Պարսից կը թագաւորէին՝ երկիրն արդէն անկած և վատթարացած էր։ Բուզանդ յետ պատմելոյ զբաժանումն զայն՝ կը յաւելու ի կատարած կոյս պատմութեան իւրոյ. «Եւ բազում գաւառք յերկոցունցն հատան. նուազեաց բաժանեցաւ ցրուեցաւ թագաւորութիւնն Հայոց, պակասեաց յիւրմէ մեծութենէն յայնմ ժամանակն և յապայ» (Բուզ. Զ. Ա.)։



## ԳԼՈՒԽ Բ.

## ԲՈՅՍ ԲԱՐՈՒՑ ՀԱՅՈՑ ԻԲՐԵՒ ԱԶԳ։

*1. Ներքին եւ արտաքին թերութիւնք ազգին: 2. Սակաւութիւն եւ պակասութիւն դպրութեան: 3. Յողդողդութիւն ի բարս: 4. Ապերախտութիւն. Մամիկոնեանք:*

**1.** Յետ խօսելոյ այսչափ զվարչութենէ Արշակունի տէրութեան, զոր իբրև արևելեան արձակ միապետութիւն կ'ընծայեցուցանէ մեզ պատմութիւնն՝ գանք այժմ խօսել համառօտիւ զբուսոյ բարուց Հայոց՝ իբրև ազգ։ Հայք էին արդարև, բառին բուն նշանակութեամբ՝ ազգ, վասն զի ունէին ազատ ազգի և ժողովրդեան հարկաւոր ամէն տարր։ Թէպէտ հարկատու և ընդ ազդեցութեամբ երկու հզօր տէրութեանց դրացեաց՝ կը վայելէին ազատութիւն ընտրութեան, օրէնսդրութեան, պատերազմի և խաղաղութեան, զինուորութեան և դաշանց։ Առանց լինելոյ բոլորովին զուրկ տեղական և քաղաքական կարևորութենէ, ի պատճառս աննման դրից երկրին, ի մէջ երկուց ծովուց, Պոնտոսին և Կասպից, որովք բաց էր նոցա ճանապարհ տուրևառիկ, միովն՝ յԵւրոպա, և միւսովն՝ ի Հնդիկս, և ի մէջ երկուց նշանաւոր գօտեաց, Կովկասուն և Կորդուաց, իբրև հզօր պատուարաց ընդդէմ հիւսիսոյ և հարաւոյ,—բաւական ընդարձակ սահման, որոյ անթիւ ազգերուն մէջ էր արդարև Հայն առաջին և գլխաւոր,—հանդերձ այսու լինելով ևս ի բուսոյ բարուց հանճարեղ, երկասէր և ժիր՝ չկրցաւ ձգել յինքն քաղաքակիրթ աշխարհի հայեցուածն և մնաց միշտ երկրորդական. ուստի և պատմութիւն նորա, մեծաւ մասամբ խառն ընդ Պարթևաց՝ հազիւ կը յիշուի ուրոյն յոյն և հռոմայեցի պատմիչներէ։

**2.** Այս յետնութեան կամ մթութեան պատճառ էր ոչ սակաւութիւնն միայն—«Եմք ածու փոքր և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ» (Խոր. Ա. Գ.)—այլ և մանաւանդ, ըստ մեզ, գրի և դպրութեան պակասութիւնն, որով զրկեալ մնաց այս պատուական ցեղն մտաւոր զարգացման, որ էական տարրն է ի կեանս ազգաց՝ գլխաւոր պատճառէն, փիլիսոփայութենէ, առ որ, եթէ օրէն իցէ

դատել իւր փառաւոր լեզուէն՝ ունէր ի բնէ հանճար, և ստիպուեցաւ շատանալ դարերով իւր անգիր վիպասանութեամբ միայն։ Հայ ազգին մտաւոր պատմութեան մէջ այս մեծ արատն, որչափ և ջանանք սրբել, ընծայելով զայն արտաքին ձախող պարագաներու՝ կը յաղթէ միշտ վճիռ Խորենացւոյն, թէ Հայն ի բնէ չէր սիրող իմաստութեան. «Ինձ թուի, որպէս այժմ՝ և առ հինսն Հայաստանեայց լեալ անսիրելութիւն իմաստից» (Խոր. Անդ.)։ (Թող չվշտանան արդի Հայք ընդ այս վճիռ, և ոչ համարին զայն իբրև ցեղային ճակատագիր.—շատ տարբեր դարու մէջ և ընդ տարբեր պարագայիւք կ'ապրինք մենք այժմ)։

Այսպէս նախնիք մեր, ինչպէս էին թուով՝ նոյնպէս մտաւոր մշակութեամբ մնացին միշտ տկար։ Եթէ յիշենք ևս աւատային դրութիւնն, յորում իւրաքանչիւր նախարարութիւն կը կապուէր ընդ զօրաւորագոյն տիրող ցեղին Արշակունեաց աւանդութեամբ կամ մանաւանդ ի հարկէ քան սրտիւ՝ ոչ այլ իմիք կարեմք նմանեցուցանել զՀայս, բայց այժմու քիւրտ ցեղերու, որ քան զիւրեանց անջատ և վայրագ ազատութիւնն՝ այլ ազատութիւն չեն ճանչնար։ Այս այնչափ ճշմարիտ է՝ մինչև Տակիտոսի «անգէտս ազատութեան» (libertate ignota) կոչել զՀայս։ Այսպիսի տարրներէ կազմեալ և այնպիսի պարագաներէ պաշարեալ՝ արդարև չմարթէր կալ Արշակունի թագաւորութիւնն, եթէ չէր երկիւղն Հռոմայեցւոց, որոց քաղաքականութիւնն կը պահանջէր պահել այս թագաւորութիւնն իբրև պատուար ընդդէմ Պարթևաց և Պարսից։

3. Բայց Հայոց մեծագոյն թերութիւնն իւրեանց տկարութեան մէջ ոչ այնչափ ներքին ազգային միութեան պակասութիւնն էր, որչափ յողդողդութիւնն։ Յայսմ ևս որչափ զկծեցուցիչ է մեզ՝ նոյնչափ ճշմարիտ վկայութիւնն Տակիտոսի։ Զյողդողդ բարս Հայոց՝ կ'ընծայէ Տակիտոս ոչ դրից երկրին միայն, այլ և, որ աւելի խոկման արժանին է ըստ մեզ՝ բարուց մարդկանն։ «Անդուստ ի վերուստ, ասէ, հաւատարմութիւն թագաւորութեանն եղև ընդ կարծեօք, և՛ ի բուսոյ բարուց բնակչացն, և՛ ի դրից երկրին» (Տակ. Բ. ԾԶ.). և այլուր (ԺԳ. ԼԳ.)—«Հայք անհաստատք ի հաւատս՝ կոչէին զերկոսին կողմանս (զՀռոմայեցիս և զՊարթևս) միանգամայն։ Բայց և այնպէս և՛ ի դրից երկրին և՛ ի բուսոյ բարուց՝ էին յանկ ի Պարթևս, ամուսնութեամբ խառնեալ ընդ նոսա. անգէտ ևս ազատութեան՝ նախամեծար ընտրէին ի նոցանէ ընդունել տէարս»։ Սակայն ճշդիւ խօսելով՝ և ոչ ընդ Պարթևս ճշդիւ յարեալ էր ազգն. «Ատելութեամբ առ Հռոմայեցիս և նախանձու ընդ Պարթևս, որպէս ասէ նոյն պատմագիր՝ էին առ երկոսին ևս կասկածելիք»։ Այս ճշմարիտ է

մանաւանդ առ հեթանոսութեամբ. յետ քրիստոնէութեան սակայն փոխեցաւ աղերսն, երբ զՊարթեւս փոխանակեցին Սասանեանք, անհաշտ թշնամիք Հայոց, ոչ վասն տիրող ցեղին միայն, որ իբրեւ ազգակից էր Պարթեւաց վերջին թագաւորին, այլեւ վասն քրիստոնէութեան, որ աւելի սերտիւ կապեց զՀայս ընդ արեւմտեան գրացւոյն։ Այնուհետեւ կը տեսնենք զՀայս միշտ դիմել առ Հռոմայեցիս, մինչեւ, ի գամ քան զգամ տկարանալ այս վերջիններուն զօրութեան յարեւելս՝ Հայք թողան Սասանեանց ոխերիմ դիտաւորութեանն։ Առ քրիստոնէութեամբ, եթէ երբէք մտեցին Հայք ի Պարսիկս՝ ի հարկէ էր այն, երբ տեսան զանձինս թողեալ լքեալ հռոմէական ձեռնտուութենէ։ Ի Տրդատայ մինչեւ ամբողջ Հայաստանի տիրող Արշակունի թագաւորաց վերջինն Վարազդատ՝ ամենեքին նստան Հռոմայեցւոց օգնութեամբ։ Ցայնչափ ժամանակի միջոցին չեն մտներ ի Հայաստան հռոմայեցի զօրք՝ բայց միայն իբրեւ բարեկամ, մինչ պարսիկ զօրք կ՚ասպատակեն մանաւանդ քան կուգան՝ համակ իբրեւ թշնամի եւ աւերիչ։ Արդարեւ ոչ փոքր պատիւ է քրիստոնեայ Հայոց, որ այս եկամուտ զօրութեան դէմ, իւրեանց սակաւութեամբն հանդերձ՝ գիտցան պաշտպանել զերկիրն աւելի քան երկու դար։ Քրիստոնէութիւնն ուսոյց արդարեւ Հայոց «ի վերայ աշխարհին կեալ եւ մեռանել» (Բուզ. Ե. Ի.)։ Ցիշատակաց արժանի է խրատն, զոր ըստ Բուզանդայ վերջին Մամիկոնեան սպարապետն Մանուէլ կու տայ որդւոյ իւրում Արտաշրի, խրատ՝ զոր քրիստոնեայ սպարապետ միմիայն կարող էր տալ։ «Ցետ այսորիկ հիւանդացաւ, ասէ, սպարապետն Հայոց Մանուէլ զախտ հիւանդութեան մահու. եւ կոչեաց զորդի իւր զԱրտաշիր, եւ պատուիրեաց նմա հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ (վերջնոյ), եւ լինել միամիտ (անկեղծ). ջանալ եւ վաստակել եւ տալ պատերազմ, եւ ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել. զի, ասէ, առ Աստուած այն արդարութիւն մեծ է եւ ընդունելի, եւ ոչ Աստուած թողու ի ձեռաց՝ յորժամ այնպէս լինիք։ Անուն քաջութեան յերկրի թողուք եւ զարդարութիւն յերկինս ընծայեցուցանէք։ Եւ ամենեւին ի մահուանէ մի՛ երկնչիք, այլ յուսաջիք յայն, որ զամենայն արար եւ հաստատեաց։ Ի վերայ աստուածապաշտ աշխարհի համարձակութեամբ մեռարուք, զի այն ինքն մահ վասն Աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա եւ ուխտի նորա եւ ի վերայ բնակ տերանց աշխարհիս Արշակունւոյ» (Բուզ. Ե. ԽԴ.)։ Նրանի՛ էր եթէ ամենայն նախարարք ունենային այս ոգին։ Քրիստոնէութիւնն տուաւ Հայոց քաջութիւն, այլ չկարաց ջնջել ի բուսոյ բարուց նոցա յողդողդութիւնը, զոր տեսած էր իբր չորեքհարիւր ամօք յառաջ հանճարեղ պատմագիրն հռոմայեցի,

ինչպէս տեսանք։ Տակիտոսի դատաստանէն չէ հեռի Վահանայ գանգատն առ Նախարարս Հայոց, որ կը հրաւիրէին զնա լինել գլուխ երկրորդ ապստամբութեանն։ Վահան յետ ջրելոյ զվստահութիւն նոցա ի Ցոյնս և յայլ գրացի ազգս՝ կը յիշեցունէ նոցա զբուն անհաստատութիւն իւրեանց. «Միաբանել խորհրդոյդ և ասել ձեզ, թէ լաւ է իմաստդ և արարէք՝ ոչ կարեմ ասել և չիշխեմ. վասն զի զԱրեաց ոյժն և սատամբակութիւնն քաջ գիտեմ, և զՀոռոմոց թուլութիւնն և զխաբէութիւնն... և վասն Վրաց արքայի և Հոնացդ զորս ասէք՝ Վիրք առանձին՝ թեթև ինչ աշխարհ են և այրուձիո՛վ սակաւաւորք. բայց վասն Հոնաց՝ ո՞ գիտաց, հաւանի՞ն գալ թէ ոչ, որք չենն ի միջի և չերևին։ Բայց քան զամենայն՝ ես առաւել յանձանց երկերուք, վասն զի մարդիկ սուտք էք և անվստահք» (այսինքն՝ չվստահելիք). (Փարպ. ԿԶ.)։ Գիտենք, թէ Նախարարք երկիցս կամեցան մատնել զիւրեանց տէրութիւնն հեթանոս դրացւոյն, յերկրորդումն կատարեցին իսկ։ Զառաջինն կը պատմէ Բուզանդ, զերկրորդն՝ Խորենացին։ «Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեանն թագաւորութեանն Հայոց, և եկին առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծամեծք, Նախարարք, կուսակալք, կողմնակալք, գաւառատեարք, գործակալք և դասապետք շինականաց. ի մի վայր եկեալ ժողովեցան, խօսել սկսան ընդ Ներսիսի և ասեն. Դու, տէր, քեզէն գիտես, զի այս երեսուն ամ է... զի ոչ մի ամ մեզ հանգիստ ոչ եղև ի պատերազմէ, և համակ սրով և սուսերօք և ի սլաքս և ի տէգս նիզակաց զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք։ Եւ արդ ոչ կարեմք այսմ ժոյժ ունել, և ոչ կարեմք տալ ճակատս. զի լաւ է մեզ, թէ ծառայեսցուք մեք թագաւորին Պարսից, որպէս ընկերքն մեր արարին, զի թողին զնա (զԱրշակ) և գնացին առ թագաւորն Պարսից. և մեք սոյնպէս առնելոց եմք, զի ոչ այլ ևս կարեմք կռուել։ Թէ պէտ իցէ թագաւորին Արշակայ կռուել ընդ Շապհոյ՝ Վասակաւ և Ադուկաւ աներաւ իւրով տացէ պատերազմ, այլ յայսմիկ Հայոց աշխարհէս և ոչ մի այր ոչ ոք է երթալոց ի թիկունս օգնականութեան նորա։ Նմա եթէ պէտ իցէ՝ տացէ պատերազմ, թէ պէտ՝ մի՛. մեր թողեալ զնա, մեզ չէ փոյթ։ Իսկ սուրբն Ներսէս խօսէր ընդ նոսա որպէս օրէն էր, եթէ Տեսէք և քաջ զմտաւ ածէք, և յիշեցէք զբանն Տեառն պատուիրանին միաբանութեամբ, որպէս պատուիրեացն՝ ծառայից հնազանդ կալ տերանց իւրեանց։ Զի ամենեքեան դուք աւադիկ կայք և վկայէք, մանաւանդ զի ամենեքեան դուք կեցեալ էք յազգէդ Արշակունւոյ. ոմանք ի ձէնջ գաւառատեարք լեալք ի նոցանէն, և ոմանք մեծամեծք աշխարհաց, ոմանք աւագ աւագ աւանաց, գեղից և գանձուց տեարք

լեալ էք և պէսպէս դաստակերտացն։ Զի թէպէտև առ առաջին Աստուած յանցաւոր իցեն ազգն Արշակունեաց՝ սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղբոյ թօթափեալ է, զոմն գործով, զոմն պատուով, զոմն իշխանութեամբ, զոմն գործակալութեամբ։ Դուք աւադիկ կամիք անկանել հեթանոսաց ի ծառայութիւն, և կորուսանել զկեանս ձեր յԱստուծոյ, և մերժել զբնակ տեարսն ձեր, զորս տուեալ է ձեզ յԱստուծոյ, և օտար տերանց ծառայեալ և նոցին անաստուած կրօնիցն ցանկալ։ Բայց լաւ լիցի ձեզ զնոյն սիրել և յանձն առնուլ և նմին հաւանել, և մերժել յանձանց ձերոց զարարչապաշտ թագաւորն։ Զի թէ բիւր չար իցէ Արշակ՝ սակայն աստուածապաշտ է, և եթէ մեղաւոր ես իցէ՝ սակայն թագաւոր ձեր է. որպէս և դուքդ ասացէք առաջի իմ, զի այսչափ ամք են, զի մարտեայք ես ի վերայ անձանց ձերոց և հոգւոց, և ի վերայ աշխարհի, ի վերայ կանանց և որդւոց ձերոց, և որ մեծն է քան զամենայն՝ ի վերայ եկեղեցեաց ձերոց, ի վերայ ուխտի հաւատոց ձերոց, զոր ունիմք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս. և համակ Տէր ետ ձեզ յաղթութիւն անուան իւրոյ։ Եւ արդ կամիք փոխանակ Քրիստոսի արարչին ձերոյ ծառայել ձեզ անաստուածն մոգութեան անօրինացն և նոցուն պաշտօնէիցն, ի թողուլ նախ զարարիչն մեր և զնորուն պատուիրանս, զոր պատուիրեաց ձեզ՝ միամիտ կալ առ տեարսն մարմնաւորս, զորս նորայն արարեալ է։ Գուցէ բարկացեալ Տէր Աստուած ձեր՝ և խլիցէ զձեզ արմատաքի, և մատնեսցէ զձեզ հեթանոսացն ի չար ծառայութիւն սարկութեանն մինչև յաւիտեան, և ոչ երբէք բարձցի լուծն ծառայութեան ի ձէնջ. և բողոքէք դուք առ Տէր՝ և նա ոչ լուիցէ ձեզ. վասն զի անձամբ անկանիք դուք ի ծառայութիւն հեթանոս տերանց և աստուածանգէտ մարդկան, ի ձեռս հեթանոս արանց, տերանց խստասրտաց, և բազում չարի դիպեալ ելանիցէ առաջի ձեր, և ոչ կարիցէք ճողոպրել յայնմանէ։ Իսկ նոքա որ էին ի մի վայր ժողովեալ՝ զաղաղակ հարկանէին. քարոզ կարգացեալ՝ միմեանց ձայն առնէին, շփոթէին, ամբոխէին և ասէին. Համպա, գնասցուք, ասեն, սփռեցարուք յիւրաքանչիւր տեղիս, զի այդմ բանից մեք ինչ ոչ կամիմք լսել։ Սփռեցան յիւրաքանչիւր տունս իւրեանց» (Բուզ. Դ. ԾԱ.)։ Նոյն տեսարան կըրկնուեցաւ առաջի Սահակայ յետ ոչ բազում ամաց. «Բայց թագաւորն Հայոց Արտաշիր անհուն սկսաւ ողողանել յանառակ ցանկութիւնս, մինչև տաղտկանալ ի նմանէ ամենայն նախարարացն։ Որոց եկեալ առ մեծն Սահակ՝ զբողոք բարձին, հրաւիրելով և զնա յօգնականութիւն ինքեանց՝ չարախօսել առ արքայն Պարսից և ի բաց ընկենուլ զթագաւորն իւրեանց և պարսիկ ածել ունող աշխարհիս։

Այլ նա ասէ. Ոչ առ սուտս ունիմ զձեզ. իմ իսկ լուեալ է զայդպիսի աղէտս ամօթալեաց, և բազում անգամ յանդիմանեալ՝ ուրացաւ։ Եւ արդ պարտ է փոքր մի տանել թերութեան առնն, մինչև զելս իրացն խորհել մարթասցուք կայսերբն Յունաց, և ոչ անօրինաց մատնել ի ծաղր և յայպանումն։ Եւ նոքա ոչ կամէին, այլ ջանային համախորհուրդ զնա իւրեանց առնել։ Այլ նա ասէ. Ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար, և ոչ պատել զբեկեալն կամ զհիւանդացեալն՝ այլ գահավէժ առնել։ Զի թէ էր հաւատացեալ թագաւորի առաջի՝ փութայի և ոչ յապաղէի. յուսալով զկանգնումն գլորելոյն. այլ հեթանոսաց յառաւել կործանումն՝ ոչ առնում յանձն, ըստ այնմ, թէ Մի՛ մատներ գազանաց զանձն խոստովանող քեզ։ Քանզի դրոշմեալ է աւազանաւն, թէպէտև անառակ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. գիճացեալ է մարմնով, այլ ոչ անհաւատ հոգւով. տկար է ի կանայս, այլ ոչ ծառայէ տարերց։ Եւ զիա՞րդ լինիցի այդ, փոխանակել զիմ ախտացեալ ոչխար ընդ առողջ գազանի, որոյ առողջութիւնն է մեզ պատուհաս։ Իսկ նախարարացն զմտաւ ածեալ, իբր թէ խաբկանօք իցէ գործն, յապաղել զնոսա զի զթագաւորն պատրաստեցուսցէ՝ ասեն ամենեքեան. Վասն զի ոչ համակամեցար մեզ չթագաւորել նմա՝ արդ և մեք կամեսցուք և քեզ չքահանայանալ մեզ։ Եւ միաբանեալ ամենեքին՝ անցին առ արքայն Պարսից Վռամ, հանդերձ Սուրմակաւ ոմամբ արծկէացի փառամոլ երիցու, չարախօսել զարքայէն զիւրեանց զԱրտաշրէ, և զմեծէն Սահակայ՝ զՅունովք գլեալ խորհրդովն» (Խոր. Գ. ԿԳ.)։

**4.** Ոչինչ ընդհատ ապերախտութեամբ, մանաւանդ թէ նենգութեամբ կը թուի թէ վարուած են նախարարք մեր ընդ վաստակաւոր ցեղին Մամիկոնենից։ ԶՄամիկոնենից գովութեամբ կը խօսի միշտ Բուզանդ։ ԶԱրտաւազդայ որդւոյ Վաչէի անկելոյ ի պատերազմի առ Խոսրովաւ՝ ասէ. «Կարի որդի վաստակաւորի էր և ի վաստակաւոր ազգէ». և զհօրէն ասէ, թէ «Լինէր ամենայն աշխարհին սուգ անհնարին (ի մահուան նորա), զի բազում անգամ էր Տեառն փրկութիւն տուեալ Հայոց ի ձեռն նորա» (Բուզ. Գ. ԺԱ.)։ Արշակ ի թագաւորելն՝ իսկ և իսկ ելանէ ի խնդիր Մամիկոնենից, որ առ Տիրանաւ հարբ նորա հեռացած էին բանակէն. «Յայնմ ժամանակի ի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից... ապա երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց, յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընտանութիւնն, զի պառակտեալք և քակտեալք էին յընտանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակի խօլութեանն Տիրանայ» (Բուզ. Դ. Բ.)։ Պապ հիացմամբ կը խօսի զնոցանէ, խոստովանելով

զվաստակս նոցա ի նախնեաց անտի. «Մահապարտ են, ասէ, այնոքիկ, որ իշխեն խօսել չարութիւն զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ։ Նախնիք դորա եկեալք առ մեզ՝ ի նախնեացն մերոց ի վերայ կեցեալք և մեռեալք են, և հայր սորա ի վերայ հօրն իմոյ մեռաւ, և սա միամտութեամբ մինչև ի մահ վաստակեալ է. և բազում անգամ Աստուած ետ մեզ յաղթութիւն ի ձեռս դորա, և շնորհեցաւ բազում խաղաղութիւն» (Բուզ. Ե. Դ.)։ Ինքեանք իսկ Մամիկոնեանք կը յիշեն յաճախ զհաւատարմութիւն իւրեանց և զվաստակ։ Այսպէս Մուշեղ ասէր ցՊապ. «Երդնոյր, ասէ Բուզանդ, և ասէր, թէ կեցից և մեռայց ի վերայ քո. որպէս նախնիք իմ ի վերայ նախնեացն քոց, որպէս և հայրն իմ ի վերայ հօրն քո Արշակայ՝ այնպէս և ես ի վերայ քո. բայց միայն չարախօսացն ունկն մի դնիցես» (Անդ)։ Մանուէլ գրելով առ Վարազդատ՝ կը յիշեցունէ նմա զիւրեանց վաստակս և զփոխարէնն, զոր կրեցին նոյն իսկ Արշակունիներէն. «Յետ այսորիկ պատգամ յղէր սպարապետն Հայոց Մանուէլ առ թագաւորն Վարազդատ և ասէր, թէ Փոխանակ ամենայն ազգին մերոյ վաստակոցն, զոր ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ միամտութեամբ առ ձեզ Արշակունիս վաստակեալ եմք, և եդեալ զանձինս մեր ի վերայ ձեր, կեցեալ և մեռեալ եմք, (զի) ամենայն նախնիքն մեր առաջինքն անկան ի պատերազմունս ի վերայ ձեր, Վասակ հայր Մուշեղի կորեաւ ի վերայ Արշակայ արքայի, և մեք հանապազ վաստակեալ և աշխատեալ եմք ի վերայ թագաւորութեան ազգիդ ձերոյ. և փոխանակ կեանս առնելոյ ընդ վաստակոցն՝ արդ որք ի թշնամեացն մեռան, որք մնացին՝ զայն դուք Արշակունիքդ կոտորեցէք։ Արդ Մուշեղ, այր քաջ, եղբայր իմ, որ ի վերայ ձեր մաշեաց զանձն իւր ի մանկութենէ իւրմէ, վանեաց կոտորեաց զթշնամիս ձեր, և ոչ կարացին թշնամիքն սպանանել՝ դուք կալար ի բազմականի խեղդեցեր» (Բուզ. Ե. Լէ.)։

Փառաւոր գովեստ է Մամիկոնեանց Բուզանդայ Դ. դպրութեան գրեթէ ամբողջ Բ. գլուխն, ուր կը կոչէ զնոսա Բուզանդ «աներկեղ, քաջասիրտ, քաջանուն, բարենշան, բարեհամբաւ, բարեգործ, յաջողակ ի գործ պատերազմաց ի բուն ի նախնեաց, հանապազ յամենայն ժամ յաղթող, բաքիանուն, իրաքաջ»։ Թերևս աւելաբանութիւն համարէինք Բուզանդայ այս գովեստն՝ եթէ չունէաք նաև Փարպեցւոյն փառաւոր վկայութիւնը, թէ «Առանց առաջնորդութեան ազգին այնորիկ (Մամիկոնենից) և ոչ մի ինչ իրք և գործք աշխարհիս Հայոց երթեալ են ի գլուխ» (Փարպ. Լ.)։ Յապստամբութեան անդ Վարդանանց՝ յոյս բոլոր նախարարաց, նորին իսկ Վասակայ, որպէս պատմէ նոյն Փարպեցին՝ էր ի Մամիկոնեանս. «Առանց

նորա (այն է Վարդանայ), ասեն, մեր այս ամենայն կամք և խորհուրդք և ոչ մի ինչ վճարին»։ Եւ պատգամաւորք, որ առաքեցան ի Հայոց դարձուցանել յետս զՎարդան, որ դէմ եդեալ էր երթալ ի Ցոյնս հանդերձ ընտանեօք՝ ասեն. «Ոչ է հնար մեզ առանց ձեր (Մամիկոնենից) և ոչ զաւակի մերում երբէք պատահել փրկութեան և կեալ» (Փարպ. անդ.)։

Թուի սակայն, թէ Նախարարաց նախանձուն և չարակամութեան փորձն ստէպ տեսած էին Մամիկոնեանք։ Մեծն Վարդան կը յիշէ զայս իբրև ծանօթ ինչ և յայտնի, համօրէն իսկ ազգը կոչելով վկայ։ «Ոչ որ փախուցեալս եմք՝ յերկիւղէ ոք ինչ սրոյ կարծիցէ զայս զմէնջ, յորմէ ոչ ոք երբէք զանգիտեալ է յազգիս մերում և ոչ երբէք—ասէ Վարդան ցպատգամաւորսն.—և թէ որպէս ի վերայ ընկերին բարւոյ առաւել քան զանձին միշտ հոգալով զանձըն եդեալ է այսմ տոհմի (Մամիկոնենից)՝ զայն և ամենայն դուք Հայք գիտէք ստուգութեամբ ի պատմութենէ գրոց և ի լսելոյ ձեր յաւագաց։ Բայց ի նենգաւոր խաբէութենէ ձերմէ, զոր արարեալ է ձեր ընդ նախնիսն մեր հանապազ՝ զայն ամենայն յիշելով գնացեալ եմք լինել անձնապուրծք, որպէս ցանկ ձեր մղեալ է զմեզ ի նեղ, և զձեր անձինս ի բաց ունելով՝ մեր միայն ազգս պատահեալ է վշտաց մեծաց և մահուց» (Փարպ. անդ.)։ Զնոյն գանգատ բերաւ յառաջ եղբօրորդի Վարդանայ Վահան՝ ի հրաւիրել զնա Նախարարաց յերկրորդ ապստամբութիւնն. «Զձեր ծանուցեալ է փորձիւ իմ, թէ որպէս հարանց մերոց ուխտեցին երդմամբ և ստեցին» (Փարպ. ԿԶ.)։



## ԳԼՈՒԽ Գ.

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄԱՍՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ։

*1. Աղբիւրք պատմութեան Արշակունեաց: 2. Ցոյն եւ Հռոմայեցի պատմիչք: 3. Ներքին եւ ազգային պատմիչք. Բուզանդ: 4. Իրք Հայոց առ Արշակունեօք:*

**1.** Յետ գնելոյ զայս համառօտ տեսութիւն զվարչութենէ թագաւորութեանն Արշակունեաց՝ գանք պատմութեան ներքին և արտաքին քաղաքական մասին։ Նախ պիտի հարցուի մենէ, թէ ինչ աղբիւրներու վրայ կը հիմնենք մեր պատմութիւնը։ Իւրաքանչիւր ազգի պատմութիւնն, որպէս այլուր ասացեալ է մեր (Ա. մասն)՝ կը խնդրուի նախ իւր յիշատակարաններէն և, ի պակասել սոցա՝ ի պատմութեան գրացի ազգաց, ընդ որս ունէր ազգն ընդ երկար և ի մօտոյ աղերս։ Դժբախտութեամբ՝ Արշակունեաց ժամանակի պատմութիւնն Հայոց, ինչպէս յայտնի է՝ չունի բնիկ աղբիւր, ուստի կը մնայ մեզ դիմել երկու մեծ դրացի ազգաց, Պարթևաց և Հռոմայեցւոց։ Հայ կամ իբր հայ աղբիւրք կ'սկսին մտիւ ազգին ի քրիստոնէութիւն, և այն մեծաւ մասամբ վկայաբանութիւններէ, այն է հոգևոր վէպերէ հաւաքեալ։ Բաց ի Բուզանդայ և ի Փարպեցւոյն չունիմք պատմագիր ազգային, որ իցէ այսմ անուան արժանի։ Խորենացին տալ կու տայ մեզ Արշակունեաց պատմութիւն մի գրեթէ անընդհատ ի սկզբանէ մինչև ի կատարած. սակայն մեր պատմագրաց հօր համբաւեալ գործը, թող զի չէ ժամանակակից՝ ունի, ինչպէս պիտի տեսնենք յիւրում տեղւոջ՝ այնպիսի թերութիւններ, որ կարեմք արկանել զնա ըստ տեղւոյն ի կիր, այլ ոչ վստահել նմա իբրև ստուգիւ վաւերական աղբեր։ Գալով յիշեալ երկու ազգաց դրացեաց՝ ի Պարթևաց չունիմք ամենևին ստոյգ պատմական աղբիւր ազգային, ուր մարթ էր թերևս գտանել բազում ինչ վերաբերեալ մեզ. ինչպէս մերն, նոյնպէս նոցին իրք և գործք՝ կը գտնուին ցիր և ցան ի գործս յոյն և հռոմայեցի պատմագրաց։ Ապա կը մնայ մեզ դիմել այս վերջնոց։

**2.** Ի յոյն և ի հռոմայեցի պատմագրաց գէթ մեր պատմու-

թեան համար կարեւորագոյնք և, իբրև ժամանակակից կամ գրեթէ ժամանակակից, արժանի հաւատարմութեան են Պողիբիոս և Ստրաբոն՝ Արշակունեաց սկզբան և ծագման համար, և ապա կարգաւ՝ Տակիտոս, Դիոն Կասսիոս և Ամմիանոս, որ գրեթէ մինչև ի վերջ Արշակունի թագաւորութեան կուտան մեզ զարտաքին քաղաքական դիպաց Հայոց հատուածներ, յորս յարելով և ներքին դիպաց յիշատակութիւններ, որովք առատ են Բուզանդ և Խորենացին՝ կ'ունենանք բաւական ընդարձակ բովանդակութիւն այսր կարևորագոյն ժամանակի պատմութեան մերոյ։ Զպողիբիոսէ և զՍտրաբոնէ խօսեցանք յառաջնում մասին մեր այս Քննական պատմութեան (էջ 234, 235)։

Կոռնելիոս Տակիտոս, լատին պատմիչ, որ ծաղկեցաւ յերկրորդում կիսում Ա. դարու, առ Փղաւեան կայսերօք և առ առաջին յաջորդօք նոցա Տրայիանոսիւ և Ադրիանոսիւ (64—134), կը կարծուի մեռեալ ութսնամեայ։ Թող ուրիշ գործերը՝ Տակիտոս ունի Պատմութիւնք և Տարեգիրք անուն երկու կարևոր գրուած։ Պատմութիւնք կը սկսին Գաղբայէ և կը հասնին մինչև Ներուաս (68—98)։ Տարեգիրք կը սկսին ի մահուանէն Օգոստեայ և կ'երթան մինչև ի մահն Ներոնի (14—64)։ Այս երկու պատմական գործոց մեծ մասն հասած է մեզ։ Տակիտոս յարգի է յոյժ ոչ ոճին միայն, այլև դատաստաններուն ողջմտութեան և պատմութեան ճշդութեան համար։ Գրեց՝ ինչ որ ինք տեսաւ անձամբ և կամ լսեց շատ հաւատարիմ ժամանակակից մարդկանէ։ ՅՕգոստեայ մինչև Ներոն, կամ ըստ Խորենացւոյն յԱրտաւազդէ Ա-ոյ մինչև յԱրտաշէս Բ. Տակիտոս կը յիշէ Հայոց և նոցա դրացեաց վերաբերեալ բազում ինչ նոր և հետաքրքրական։

Դիոն Կասսիոս, յոյն պատմիչ, ծաղկեցաւ ի վախճանի Բ. դարուն և ի սկզբան Գ-ին։ Վարեց բարձր պաշտօններ առ Կոմոդոսիւ, Պերտինաքսաւ և Սևերոսն Աղէքսանդրիւ (180—230)։ Եղաւ անգամ ծերակուտին, հիւպատոս (229), կուսակալ Փոքրուն Ասիոյ և Ափրիկէի։ Թող զայլ գիրս՝ Կասսիոս ունի Հռոմէական պատմութիւն ի գալստենէն Ենեայ յԻտալիա մինչև իւր հիւպատոսութեան տարին։ Այս գործէն 19 գիրք միայն ամբողջ հասած են մեզ, մնացեալներէն հատակոտորներ։ Այս պատմութեան մէջ յիշուած է, յԱրտաւազդայ Բ-է մինչև Խոսրով մեծ՝ Հայոց վերաբերեալ բազում ինչ։ Պատմութեան ճշդութեան և կարևորութեան աղագաւ ինչ որ ասացաւ զՏակիտոսէ՝ զնոյն պարտ է իմանալ և զսմանէ։

Յետ այս երկու աւագ պատմագրաց կու գայ Ամմիանոս Մարկեղինոս լատին պատմիչ առ Յուլիանոսիւ (360), և էր ի բանակի նորա, երբ գնաց նա Պարսից դէմ։ Ամմիանոս ևս ունի ի Ներուա-

տայ մինչև ի Վաղենտինիանոս (96—375) «Պատմութիւն Հռոմայեցի կայսերաց», ուր կան յիշուած, մանաւանդ Արշակայ և Պապայ ժամանակէն՝ զՀայոց ոչ սակաւ դէպք կարևորք, որոց ժամանակակից և մեծաւ մասամբ ականատես էր նա։

Ինչ որ այս երեք պատմիչք կը գրեն զՀայոց՝ են այնպէս կարևոր, միանգամայն ճշմարիտ, որ թէպէտ մեծ մասն նոցա, մանաւանդ պատմեալքն ի Տակիտոսէ, չեն յիշուած մեր ազգային պատմութեան մէջ (իմա առ Խորենացւոյն, քանզի չունինք այլ պատմիչ քան զսա այն ժամանակին համար)՝ չեն կրնար թողուիլ դուրս կատարեալ Հայոց պատմութենէ, առանց ծայրաքաղ թողլու մեր ազգային պատմութիւնն, ինչպէս եղած է ցարդ։

Թող այս պատմիչներն, որ յիշուեցան և որ արդարև երևելիքն են՝ կան ուրիշ յոյն և լատին մատենագիրք և պատմագիրք, յորոց կրնայ առնուիլ ինչ ինչ ընտրանաւ, մանաւանդ ժամանակակիցներէն։ Այսպիսի են Կիկերոն և Տիտոս Լիւիոս, առաջինն՝ ճարտարախօս, երկրորդն՝ պատմագիր լատին յԱ. դարու նախ քան զՔր., Պլինիոս աշխարհագիր լատին, Դիոդորոս Սիկիլիացի և Պլուտարքոս պատմագիրք յոյն, Կուինտոս Կուրտիոս, Վէլլէոս Պատերկուղոս, Յուստինոս, Սուետոնիոս, Յուլիոս Փլորոս լատին պատմիչք Ա. դարու, Ապպիանոս յոյն պատմիչ Բ. դարու, Հերովդիանոս նոյնպէս յոյն պատմիչ Գ. դարու, Ռուփոս, Եւտրոպիոս, Սպարտիանոս, Յուլիոս Կապիտոլինոս, Որոսիոս, Աւրեղիոս Վիկտոր, Տրեբեղլիոս Պողիոն—լատին պատմիչք Դ. դարու, Զոսիմոս յոյն Ե. դարու և Պրոկոպիոս նոյնպէս յոյն ի Զ-ումն առ Յուստինիանոսիւ։ Այս օտար պատմիչք, զորս, մանաւանդ զառաջինսն, յիրաւի մարթ էր կոչել աղբիւրս պատմութեան Հայոց՝ յիշեցինք միայն համառօտիւ, խախտելու համար զայն կանխակալ կարծիս, թէ Հայոց պատմութիւնն հայ պատմագրաց մէջ միայն պարտ է խնդրել, և թէ ինչ որ սոքա կը պատմեն՝ ճշմարիտ է, ինչ որ արտաքին պատմիչք՝ սուտ, թէպէտև իցեն սոքա ծանր և արժանահաւատ, որպիսի է Տակիտոս։ Որևիցէ դէպք, յիշեալ ի Վարդանայ կամ ի Կիրակոսէ և կամ ուրիշ հայ պատմագրէ, թէև հազար և աւելի ևս ամօք յառաջ քան զպատմիչն, և ոչ միայն առանց ապացուցի, այլ և անհեդեդ՝ պարտի լինել ընդունելի, մինչ դէպք այնպէս սերտիւ հիւսեալք Հռոմէական շքեղ պատմութեան հետ, և պատմեալք ականատես և ժամանակակից մարդոց՝ պարտին համարուիլ սուտ կամ սխալ, վասն զի պատմուած չեն կամ այլազգ կը պատմուին ի Խորենացւոյն կամ յայլմէ ումեքէ հայ պատմագրէ։

Յ. Գալով ներքին կամ ազգային պատմչաց՝ յիշենք առ այժմ

զԲուզանդ միայն։ Մատեանն, զոր կոչեմք Բուզանդ՝ է պատմութիւն Հայոց ի Խոսրովայ որդւոյ Տրդատայ, Կոտակ կոչեցելոյ, մինչև ի բաժանումն թագաւորութեանն Արշակունեաց, գործ Փաւստոս Բուզանդ անուն ուրումն յունի, որ կոչուած է թարգմանչէն Մծ պատմագիր և ժամանակագիր Յունաց, ինչպէս յայտնի է Գ. դպրութեան վերջին ԻԱ. գլխոյն յաւելուածէն. «Կատարեցաւ երրորդ դարք, քսան և մի պատմութեանց դպրութիւնք, ժամանակագիր կանոնք Փաւստեայ Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց»։ Այս հատուածին մէջ փոխանակ «Փաւստեայ»՝ Վենետիկ տպուածն 1832 ունի «փախստեայք»—«ժամանակագիր կանոնք փախստեայք Բիւզանդեայ»։ Այսպէս՝ անունն Փաւստոս կը մնայ սակաւ ինչ տարակուսական. նայելով սակայն Փարպեցւոյն, որ կը կոչէ զնա «Փոստոս Բուզանդացի»՝ հաւանական է թէ բառն, «փախստեայ» Վենետեան տպագրութեան կամ ձեռագրին՝ է վրիպակ։ Բիւզանդ անունն սակայն ուրիշ երեք տեղ կրկնուած է ի մատենին, այն է ի գլուխս վերջին երից գրոց, «Չորրորդ դպրութիւն Բիւզանդեայ», «Հինգերորդ դպրութիւն Բիւզանդեայ». «Բիւզանդեայ վեցերորդ խոստաբանութիւն»։ Երրորդ դպրութիւնն միայն ունի փոխանակ Բիւզանդեայ՝ Բուզանդարան--«Բուզանդարան պատմութիւնք», եթէ բառն Բուզանդարան չէ վրիպակ։ Եթէ միւս անունն Բուզանդայ էր արդարև Փաւստոս, որ չորեցս յիշուած է (Դ. Գ, Ե. ԻԴ, Զ. Ե և Զ) բուն մատենին մէջ իբրև եպիսկոպոս, թելակալ մեծին Ներսիսի նորա կաթողիկոսութեան բոլոր ժամանակ, ձեռնադրող նորա ի սարկաւագութիւն (Դ. Գ.) և ի մահուան նորա առաջիկայ (Ե. ԻԴ.), ազգաւ Հոռոմ—պատմագիրն Փաւստոս Բուզանդ՝ է նոյն Փաւստոս եպիսկոպոս։ Այս կը հետևի նոյն իսկ պատմութենէն։ Պատմագիրն կը խոստանայ ուրեք տալ ի վերջ կոյս մատենին տեղեկութիւն զանձնէ, և կուտայ իսկ իւր վերջին դպրութեան Ե. և Զ. գլուխներուն մէջ համառօտ տեղեկութիւն զՓաւստոսէ ումեմնէ եպիսկոպոսէ. ապա Փաւստոս եպիսկոպոս է պատմագիրն Փաւստոս։ Չունի բաւական զօրութիւն առարկութիւնն ոմանց, թէ տեղեկութիւնն զՓաւստոսէ եպիսկոպոսէ չէ այն, զոր պատմագիրն կը խոստանայ տալ զանձնէ, քանզի չէ ըստ ամենայնի համաձայն խոստման մատենագրին, այսինքն թէ փոխանակ տրուելու տասն գլխով և ի վախճանի գործոյն՝ տրուած է երկու գլխով միայն և տասն գլխով յառաջ քան զվախճան գործոյն։ Նախ հատուածն, ուր յիշուած է խոստումնն—«Սորա ամենայն պատմութեանց յաղագս իմ տեղեկութեան, որ միանգամ զմատեանս ընթեռնուք. տուք տասն համարական թուոյ»—է մութ. չյայտ-

ներ թէ տասն գլխով տրուած էր տեղեկութիւնն, թէ տասն գլխով առաջ։ Երկրորդ, և մանաւանդ, դժուարին է ընդունել, թէ պատմագրին և տեղեկութեան մէջ յիշուած անձին անուան նոյն լինելն ըստ պատահման միայն է։ Ուստի ըստ մեզ չիք բաւական պատճառ պնդելոյ, թէ տեղեկութիւնն այն չէ կատարումն խոստման մատենագրին. ապա Փաւստոս եպիսկոպոս և Փաւստոս պատմագիր են միևնոյն անձն։ Բայց չէ նոյնպէս բանաւոր ասել զնոյն՝ զՓաւստոսէ եպիսկոպոսէ, որ յիշուած է Բարսղի Կեսարացւոյ թուղթերուն մէջ, զի սորա կենաց ժամանակին հանգամանք չեն միաբան հանգամանաց կենաց և ժամանակին մերոյն Փաւստոսի, թէպէտ Չամչեան զայն Փաւստոս ևս կը համարի նոյն ընդ մերումն։ Տես Չամչ. Ա. 447։

Արդ չէ անհաւանական ասել, թէ Զ. դպրութեան Ե. և Զ. գլուխներն, որ են համառօտ նկարագիր անձին Փաւստոսի եպիսկոպոսի՝ կատարումն են խոստման մատենագրին՝ տալոյ տեղեկութիւն զանձնէ ի վերջ կոյս պատմութեան իւրոյ։ Արդարև ըստ խոստման մատենագրին (տես զվերջին հատուած գլխոց ցանկին Զ. դպրութեան) կը թուի, թէ պատմագիրն ի կատարածի գործոյն տասն գլխով պիտի տար զայն տեղեկութիւն, մինչդեռ զայն տրուած կը գտնենք երկու գլխով միայն, և տասն գլխով յառաջ քան զվախճան գործոյն։ Բայց մթութիւն լեզուին տուած է այնպէս կարծել. հեղինակին միտքն այն չէ։ Բառն «ստորոտ» դրուած է փոխանակ «վերջաբանի»։ Ուստի Զ. դպրութեան ցանկին զայն վերջին մասն պարտ է ընթեռնուլ այսպէս. «Ստորոտ (վերջ) բովանդակ պատմութեանս։ Ցաղագս իմ տեղեկութիւն, որոց ընթեռնուն զմատեանս՝ և այլ ևս գլուխք թուով տասն»։ Եւ արդարև Բուզանդայ Զ. դպրութեան առաջին չորս գլուխներն են վախճան պատմութեան նորա, և ունին Ա. գլուխն՝ զպատմութիւն բաժանման թագաւորութեան Արշակունեաց (388)՝ Բ. Գ. և Դ. գլուխներն՝ զպատմութիւն երից յաջորդացն Ներսիսի, այն է՝ Զաւենայ, Շահակայ և Ասպուրակեայ († 390), առ որով կը թուի վախճանեալ ծերունին Փաւստոս. իսկ Ե. և Զ. գլուխք ունին զխոստացեալ տեղեկութիւնն զՓաւստեայ. յետոյ կուգան տասն գլուխք այլևայլ եպիսկոպոսաց և վանականաց վրայ, որ էին նշանաւորք ի ժամանակին։ Բայց եթէ դիցուք ևս, թէ այս մեկնութիւն բռնի է, և հեղինակն ճշդիւ չէ պահած գլուխներուն կարգը, փոխանակ դնելոյ ի վերջ գործոյն իւր անձին վրայ տեղեկութիւնը, դրած է յառաջ և երկու գլխով միայն և ոչ տասն՝ այս չեղծաներ մեր պատճառին զօրութիւնը։ Միշտ կը մնայ յայտնի, թէ Փաւստոս եպիսկոպոս և Փաւստոս Բուզանդ պատմագիր՝ են

միևնոյն անձն։ Հին ձեռագիր մատեաններու մէջ մեր տպագրեալ գրոց կարգը և ճշգութիւնը պահանջել խիստ է։

Միւս ևս պատճառ նոյն համարելոյ մեր զՓաւստոս պատմագիր ընդ Փաւստոսի եպիսկոպոսի այն է, զի պատմութիւնն Բուզանդայ է արդարև գործ այնպիսւոյ, որ երկար ժամանակ կեցած է Հայոց մէջ, որպիսի էր Փաւստոս եպիսկոպոս, քաջ հմուտ ներքին գործոց և իրաց Հայոց։ Սաստիկ յարումը, զոր ունի պատմիչն առ Ներսէս մեծ՝ կը ցուցնէ, թէ մերձաւոր էր նա Ներսէսի, տեղեակ և խելամուտ գործոց և վարուց մեծի հայրապետին և միջամուխ գործոց Հայոց։

Երեք մեծ թերութիւն կը գտնեն առ Բուզանդայ, առաջին՝ թշնամութիւն առ ազգն, երկրորդ՝ աւելաբանութիւն, և երրորդ՝ տգիտութիւն հայ լեզուի կամ խակութիւն. ուստի և կը հետևցունեն, թէ մատեանն է գրուած օտարէ հայերէն լեզուաւ և յունարէն գրով. (քանզի ոմանք թելադրեալ ի բանից Խորենացւոյն—«Գիր Պարսից և Յունաց, որովք այժմ առ մեզ գտանին ամբաւ գրուցաց մատեանք» Խոր. Ա. Գ.—կարծեցին, թէ Հայք յառաջ քան զգիւտ գրոյն կը վարէին յոյն և պարսիկ այբուբենիւ. մինչ «գիր» անդ և այլուր առ Նախնիս կը նշանակէ դպրութիւն կամ լեզու, և ոչ լոկ նշանագիր)։ Բայց Բուզանդ, կատարեալ կղերական, եթէ ուրեք ուրեք կը պարսաւէ կամ մանաւանդ կը մեղադրէ զՀայս, երբ կը գտնէ զնոսա հակառակ կղերին կամ նուազեալս ի բարեպաշտութենէ՝ բազում ուրեք ևս կը գովէ զնոսա, երբ հլու և անսացող կը գտնէ զնոսա եկեղեցւոյ և եկեղեցական կարգաց։ Այսպէս Վրթանայ ժամանակին վրայ կը խօսի գովութեամբ. «Յաւուրս սորա (Խոսրովու) եկաց և եղև քահանայապետ յաթոռն հօրն, փոխանակ հօրն իւրոյ և եղբօրն իւրոյ՝ երէց որդին Գրիգորի Վրթանէս։ Խաղաղութիւն և շինութիւն, մարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և ստացուածաշատութիւն և շահեկանութիւն և մեծն աստուածասէր պաշտօն ի հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս սորա աճել բազմացաւ» (Բուզ. Գ. Գ.). և ի Դ. գլուխն Դ. դպրութեան, յետ բերանալիր գովելոյ զմեծն Ներսէս և նորա բարեկարգութիւններն՝ կը յաւելու. «Եւ եղև խաղաղութիւն և նորոգութիւն յաւուրս նորա ամենայն եկեղեցեաց, և յաճախէր շուք պատուի ամենայն եպիսկոպոսացն ընդ ամենայն տեղիս Հայոց մեծաց։ Եւ լուսաւորութիւն կարգի եկեղեցւոյ ամենապայծառ ծաղկեաց ամենամեծ լիութեամբ. կարգեցան կարգք կաթողիկէ եկեղեցեաց ամենայն վայելչութեամբ, և բազմացան կարգք սրբութեան պաշտամանցն և պաշտօնէիցն յաճախութիւն»։ Ընդ հակառակն կը պարսաւէ զՀայս իբրև

թուլացեալս ի բարեպաշտութենէ առ Տէրանաւ. «Զկնի թոպամահն լինելոյ երանելոյն Յուսկան, անառաջնորդք եղեալ՝ իբրեւ զկոյրս մոլորեցան երկիրն լեզուին թորգոմական աշխարհին։ Քանզի տուաւ նոցա ոգի մոլորութեան. աչս՝ զի մի տեսցեն, եւ ականջս՝ զի մի լսիցեն, եւ սիրտ՝ զի մի իմասցին դառնալ յապաշխարութիւն։ Եւ զխաւարային խորխորատ կորստեան գտեալ, հարեալ իւրեանց անձանց ճանապարհ՝ կործանեցան անկեալք. զի ոչ այն ոք գոյր, որ նոցա մոլեգնութեանն պատկառուկս արկանէր ըստ մեղս գործելոյ, այլ անհովիւք էին։ Զկորստեան ճանապարհն համարձակէին, ի չարիս կամօք գնացեալք եւ կամօք լեալք որդիք բարկութեան, եւ առանց Աստուծոյ շրջէին յաշխարհի կամակոր ազգ տանն Հայոց երկրին։ Նմանեալք լինէին այնմ հօտի խաշանց, որ զպահպանութիւն շանցն պահողաց պահապանացն ի բաց մերժեցին, եւ կամօք իւրեանց կերակուր գէշ թշնամութեան գայլոցն մատնեցան» (Բուզ. Գ. ԺԳ.)։ Մեծ գովութեամբ կը խօսի Բուզանդ զկաթողիկոսաց։ ԶՎրթանայ ասէ այսչափ միայն համառօտիւ, թէ «Լուսաւորէր եւ առաջնորդէր նոցա սուրբն Վրթանէս իբրեւ զհայրն, իբրեւ զեղբայր իւր. իրաւունք եւ արդարութիւն ծաղկեալ էին ի դարուն յայնմ» (Բուզ. Գ. Գ.)։ ԶՅուսկանէ խօսի աւելի ընդարձակ. «Զամենայն իսկ զերկրաւորս առ ոչինչ համարեալ՝ ոչ լաւ համարեցաւ զանցաւորս, այլ զվերինն. երկնակեաց կենացն ցանկացեալ հայէր։ Լաւ համարէր զծառայելն միայն Քրիստոսի, ոչ ինչ ածէր ընդ միտ զսէր թագաւորին կամ ի նմանէ կուսէ զպատուեալն, կամ զմեծութիւն կամ զընդանութիւն փեսայութեան թագաւորին. այլ յայնմ ամենայնէ ուրացեալ հրաժարէր, եւ օտարոտիս եւ գարշելիս եւ պատրանս համարէր։ Լաւ համարեցաւ զնախատինսն Քրիստոսի քան զմեծութիւն թագաւորացն. զճգունս վարուց ընտրեալ անձին իւրոյ՝ յերկոտասանամենից եւ ի վեր առաքինանայր. իւրոց հարցն նմանեալ, եւ զեղբօրն իւրոյ Գրիգորի զօրինակ բերէր յանձին. զքրիստոսեան լուծն առանց ամենայն յապաղութեան ձգէր մինչեւ ի վաղճան» (Գ. Ե.)։ Իսկ զեղբօրէն նորա զԳրիգորիսէ ասէ. «Առաջի իսկ ամենեցուն էր սքանչելի եւ զարմանալի. խստագոյն եւ դժուարագոյն անհամարք ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն, պահօք եւ սրբութեամբ, տքնական հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմութեան առ Տէր Աստուած կանխելոյ վասն ամենայն մարդոյ։ Զաւետարանական ընթացսն եւ զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ՝ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր. առաւել եւս փութայր, գուն եդեալ յորդորելով զամենեսեան առ ի բարեացն քաջալերութիւն. զցայգ եւ զցերեկ պահօք եւ աղօթիւք եւ ուժգին խըն-

դրուածովք և բարձրակայ կատարման հաւատովքն՝ մերձաւորաց և հեռաւորաց զհոգևոր եռանդն ածէր. իբրև զպատերազմասէր նահատակ՝ միշտ զանձն ի կրթութիւն և ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց և վշտաց, առ ի տալ պատասխանի ամենայն համարձակութեամբ, վասն ճշմարտութեան հաւատոցն մարտընչել որ վասն Քրիստոսի» (Բուզ. Գ. Զ.)։ Զներսէսէ յառաջ քան զկաթողիկոսութիւն նորա՝ ասէ. «Էր երկիւղած ի Տեառնէ Աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա. մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ իմաստուն և առանց ակնառութեան. իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, աղքատասէր, ի սրբութիւնս ամուսնութեանցն օրինաւոր, և կատարեալ սիրովն Աստուծոյ, և առ իւր ընկերս՝ ըստ պատուիրանին — սիրել զամենայն մարդ իբրև զանձրն։ Զի ի զինուորութեանն այսպէս կատարեալ էր վարուք լաւութեամբ, որ մինչդեռ մանուկ իսկ էր՝ գնայր նա ամենայն պատուիրանօքն Տեառն, և արդարութեամբ, անարատութեամբ և ամենայն պաշտամամբք առ ընկերս իւր։ Անձաձրոյթ էր, և ունէր զնախանձն Աստուծոյ, և եռայր սուրբ Հոգւովն. այսպէս իսկ էր ամենայնիւ կատարեալ յամենայնի։ Եւ զաղքատս և զտառապեալս այսպէս սիրէր և ակն ածէր ի վերայ նոցա՝ զի զիւր ինչ զհանդերձս և զկերակուր հասարակէր ընդ նոսա։ Եւ նեղելոց և տարակուսելոց օգնական և վերակացու, և ջատագով ամենայն զրկելոց լինէր նա։... Ցայնժամ եդ Տէր ի միտս ամենեցուն՝ խնդրել իւրեանց հովիւ զայն, որ նոցա կարող լինէր զառաջնորդութիւն կենաց ճանապարհին ցուցանել։ Եւ մինչդեռ իսկ զձևս զինուորութեան յինքեան բերէր յերևելիսս՝ ներքին մարդովն զՔրիստոս էր զգեցեալ յանձն իւր, և ազնուական վարս էր յինքեան կերպարանեալ։ Եւ յուսովն զոր ունէր՝ խաչեալ էր ընդ Քրիստոսի, և թաղակից եղեալ էր ընդ նմին, և սիրով հաւատոյ մեռեալ էր մեղացն, և յարութեան յուսոյն արդարութեան սպասէր։ Վասն այսորիկ յիրաւի արժանի եղև սա աթոռոյն հայրապետաց և տեղւոյ հարցն իւրոց առաջնոց» (Բուզ. Դ. Գ.)։ Եւս աւելի զկնի կաթողիկոսութեանն յաճախէ Բուզանդ գովեստս զներսէսէ. «Եւ նստաւ սուրբն Ներսէս յաթոռ հայրապետութեան։ Ի հովուութեան նորա բազում խաղաղութիւն լինէր աշխարհին. զի ի վարս կարգաց գնացից իւրոց նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի. արդարև հայրաբարոյ գտանէր» (Բուզ. Դ. Դ.)։ Յետոյ կը յարէ Բուզանդ Ներսիսի գործերուն մանր յիշատակութիւնը մեծամեծ գովեստներով, և կը բովանդակէ ըսելով. «Ոչ երբէք ուրեք եղև նման նմա այլ ոք ի Հայաստան երկրին» (Անդ)։

Ոչինչ ընդհատ գովութեամբ կը խօսի Բուզանդ զբարեպաշտ

թագաւորաց, որպէս զՏրդատայ և զորդւոյ նորա զԽոսրովէ։ ԶՏրդատ
կ'անուանէ «քաջ և առաքինի».—«Յետ այսորիկ թագաւորեաց Խոս-
րով Կոտակ, թոռն Խոսրովու, որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ
արքայի» (Բուզ. Գ. Գ.). և ի գլուխն ԺԴ. կոչէ զնա «յառաջընթաց
Քրիստոսի».—«Սիրելի էր աշխարհին պատուել զյառաջընթացն Քրիս-
տոսի զթագաւորն իւրեանց Տրդատ»։ Զթագաւորութիւնն Խոսրովու
նոյնպէս կը գովէ մեծապէս.—«Խաղաղութիւն և շինութիւն, մար-
դաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և ստացուածա-
շատութիւն և շահեկանութիւն, և մեծն աստուածասէր պաշտօն ի
հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս նորա աճել բազմացաւ»
(Բուզ. Գ. Գ.). և այլուր (Գ. ԺԱ.) կը կոչէ զնա «քաջ արանց,
աշխարհաշէն».—«Ապա յետ այսորիկ փոխեալ լինէր քաջ արանցն
աշխարհաշէնն Խոսրով թագաւորն Հայոց մեծաց. և ժողովեալ աշ-
խար եդեալ լացին զնա ամենայն սահմանք աշխարհաց գաւառաց
Հայոց մեծաց»։ Նաև զնախարարաց, զՄամիկոնեանց մանաւանդ՝
բազում ուրեք գովութեամբ կը խօսի Բուզանդ, ինչպէս տեսանք
վերագոյնն։ Պատմիչ մը, որ այսպիսի և այսչափ դրուատեօք կը
խօսի ազգին հայրապետաց, թագաւորաց, զօրավարաց, նոյն իսկ
երկրին կարգաց և յօրինուածութեան վրայ ըստ տեղւոյն՝ կրնա՞յ
թշնամի կոչուիլ, եթէ ուրեք ուրեք պատմէ ազգին թերութիւն-
ներն և մոլորութիւններն ևս անաչառապէս։ Քան զգովեստս Բու-
զանդայ չեն նուազ իրաւացի պարսաւքն, մանաւանդ զժամանակէ
խօլութեանն Տիրանայ, մինչ երկու հայրապետք, Յուսիկ և Դա-
նիէլ, սպանուեցան չարաչար՝ հրամանաւ անխրատ թագաւորին։
Մեծագոյն պարսաւ Բուզանդայ զՀայոց կը թուի ոմանց այն, զոր
ասէ, թէ Հայք ի սկզբանէ ուղղութեամբ չընկալան զքրիստոնէու-
թիւնն, այլ մարդկօրէն պատճառներէ ստիպեալ.—«Ի վաղընջուց,
ասէ, յորմէ հետէ առին նոքա զանուն քրիստոնէութեանն՝ լոկ մի-
այն իբրև զկրօնս իմն մարդկութեան յանձինս իւրեանց և ոչ ջեր-
մեռանդն ինչ հաւատովք ընկալան։ Ոչ եթէ որպէս պարտն էր,
գիտութեամբ, յուսով կամ հաւատով, բայց միայն սակաւ ինչ որք
զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց, որք էին
հասու ինչ այնմ փոքր ի շատէ։ Իսկ որք արտաքոյ քան զգիտու-
թիւն արուեստին էին այն խառնաղանճ բազմութիւն մարդկան ժո-
ղովրդոց, նախարարացն և կամ շինականութեանն, եթէ զցայգ և
զցերեկ նստեալ վարդապետացն և ըստ նմանութեան ամպոցն իբրև
զյորդահեղեղ ինչ անձրևաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի
վերայ հոսէին՝ ոչ ոք ի նոցանէն և ոչ մի ոչ, և ոչ մի բան, և ոչ
կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ ինչ, և ոչ նշմարանս ինչ զոր ըն-

սէինն՝ և ոչ կարէին ինչ ունել ի մտի։ Վասն զի միտք իւրեանց ընդ անպիտանս, ընդ անօգուտս ևեթ զբօսեալ էին. զոր օրինակ մանկունք տղայք ընդ մանկութեանն և ընդ տղայութեանն խաղալիկ խանդարեալք, և զպիտոյիցն և զկարևորացն ոչ ինչ փոյթ արարեալ՝ սոյնպէս և (սոքա) դեգերեալ մաշէին յանուղղայ կրթութիւն ընդ չքնոտի մտացն, ի հնութիւն հեթանոսութեան սովորութեանց, բարբարոս խուժադուժ միտս ունելով» (Բուզ. Գ. ԺԳ.)։ Զբպարտութիւն համարէինք թերևս զայս դատաստան Բուզանդայ՝ եթէ քան զայն խստագոյնն չգտանէինք առ Խորենացւոյն, հանդերձ մարգարէութեամբ իմն, որ բաւական է քստմնեցուցանել ամէն հայ ընթերցող։ «Սա—ասէ Խորենացին զՏրդատայ—յետ հաւատոյն որ ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբք բացափայլեալ՝ ևս քան զևս յաճախէր որ ինչ յաղագս Քրիստոսի գործ և բան, սաստելով և հաւանեցուցանելով զմեծամեծ նախարարսն, միանգամայն և զամենայն բազմութիւն ռամկին, լինել արդարև Քրիստոսի, որպէս զի վկայեսցեն հաւատոցն՝ ամենեցուն և գործքն։ Այլ զխստասրտութիւն կամիմ ասել, թէ և զամբարհաւաճութիւն ազգիս մերոյ ի սկզբանցն և այսր, որպէս անհամբոյր բարուց, և ճշմարտութեան անհարազատ, կամ թէ բնութիւն ունելով զբարձրայօնութիւն և զկամակորութիւն՝ ընդդիմանան կամաց թագաւորին յաղագս կրօնիցն քրիստոնէականաց, զհետ երթալով կամաց կանանց և հարճից։ Որում ոչ կարացեալ ներել թագաւորին՝ ընկեցեալ զերկրաւոր պսակն՝ զհետ ընթանայր երկնաւորին, արագ հասանելով ի տեղի սուրբ ճգնաւորին Քրիստոսի, ծածկամուտ լեռնակեցիկ եղեալ։ Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւնն, մանաւանդ թէ զանօրէնութիւն և զամբարշտութիւն ազգիս մերոյ, և զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա գործս։ Քանզի զհետ առաքեալ կոչեն զնա՝ լինել ըստ կամաց նոցա, և ունել զթագաւորութիւնն։ Իսկ ի չհաւանել սորոյն՝ տան նմա արբումն, որպէս անդ ուրեմն ի հինսն Աթենացիքն Սոկրատայ զմոլեխինդն, և կամ թէ զմերն իսկ ասել՝ կատաղեալ Եբրայեցիքն ըմպելի լեղեաւ խառնեալ Աստուծոյ մերոյ։ Եւ զայս արարեալ հիջուցին յինքեանց զբազմափայլ ճառագայթն աստուածպաշտութեան։ Վասն այսորիկ ի վերայ իմոցս ողբալով ասեմ՝ որպէս Պաւղոս յաղագս իւրոցն և թշնամեաց խաչին Քրիստոսի. բայց ասեմ ո՛չ զիմ բանս, այլ զհոգւոյն սրբոյ. Ազգ թիւր և դառնացող, ազգ, որ ոչ ուղղեաց զսիրտ իւր և ոչ հաւատարմացաւ Աստուծոյ ոգի նորա։ Ա՞րք Արամեանք, մինչև յե՞րբ էք ծանրասիրտք, ընդէ՞ր սիրէք զնանրութիւն և զանաստուածութիւն։ Ո՞չ ծանեայք, զի սքանչելացոյց Տէր զսուրբս իւր, և ոչ Տէր լուիցէ յաղաղակել ձերում

տռ նա։ Բարկացեալ մեղանչեցէք, և յանկողինս ձեր ոչ զղջացարուք, քանզի զենէք զենումն անօրէնութեան և զյուսացեալսն ի Տէր արհամարհեցէք։ Վասն այսորիկ եկեսցէ ձեզ որոգայթ, զոր ոչ ծանեայք, և որսն զոր որսացէք՝ ըմբռնեսցէ զձեզ և նովին որոգայթիւն անկջիք» (Խոր. Բ. ՂԲ.)։

Երկրորդ թերութիւնն, այն է աւելաբանութիւն Բուզանդայ է, որպէս արդէն ասացաւ՝ ի թիւս, և այն մանաւանդ՝ երբ կը խօսի զթուոյ Պարսից զօրաւն։ Գալով երրորդ կարծեցեալ թերութեան Բուզանդայ, այն է ագխտութիւն կամ խոլթութիւն լեզուին՝ է բոլորովին սխալ։ Թէ Բուզանդ է թարգմանութիւն, և թարգմանութիւն միոյ ի թարգմանչաց՝ յայտնի է և առանց հակառակութեան։ Առատ, փափուկ, նոր, անարուեստ կամ մանաւանդ անպաճոյճ լեզուն Բուզանդայ, կամ լաւ ևս ասել թարգմանչին նորա, նշան է ոչ եթէ Հայերէնի ագխտութեան կամ խակութեան մատենագրական ոճոյ, այլ ժամանակին ժողովրդեան լեզուին, զոր քան Եզնկայ, Ոսկեբերանի և այլոց հարց գործերուն թարգմանութեան կիրթ ոճն աւելի ընտրած կը թուի թարգմանիչն, և նպատակն էր անտարակոյս՝ առնել զգործն, իբրև տոհմային պատմութիւն՝ յանկագոյն ժողովրդեան ճաշակին, և այս կը բարձրացունէ մանաւանդ քան կը նուազեցունէ Բուզանդայ լեզուին յարգը։ Ըստ մեզ միմիայն թերութիւն Բուզանդայ է ստէպ մուտ տալն սքանչելեաց, և այս ոչ այնչափ Բուզանդայ անձին, որչափ ժամանակին է ընծայելի։ Մեծ առաւելութիւն Բուզանդայ է միաբանութիւնն ընդ ժամանակակից պատմութեան, մանաւանդ Ամմիանու, ընդ որում կ'երթայ զոյգ, մինչ Խորենացին կամ աղբիւր նորա կը հեռանայ։

Բուզանդ իւր յառաջաբանին մէջ—«Խոստաբանութիւն նախագիտելի»—իւր գործին վրայ կը խօսի այսպէս. Այս երրորդ դպրութեան, ասէ, ընդ որում կից են ուրիշ երեք դպրութիւնք, ընդ ամենայն գիրք չորք՝ նիւթն է այս. Պատմութիւն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ, ուր պիտի խօսուի զվարուց քահանայապետաց սրբոց մինչև յելս նոցա յաշխարհէ, զգործոց Արշակունի թագաւորաց, զօրավարաց և քաջ նախարարաց, զիրաց խաղաղութեան և պատերազմի, շինութեան և աւերածոյ, արդարութեան և անօրէնութեան, աստուածպաշտութեան և ամբարշտութեան. ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչև ի վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, և ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի մինչև ի վերջինսն ի նորա տանէն, որք կացին եպիսկոպոսապետ Հայոց։ Զայսմ ամենայնէ գրած եմ յայս չորեսին դպրութիւնս, զիւրաքանչիւր դպրութիւն բաժա-

նեալ է գլուխս, ի սկիզբն իւրաքանչիւրին յարելով գլուխներուն ցանկը։ Ահա բնագիրն. «Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ պատմութեանցս. ժամանակագիր չորրորդ մատենից (այսինքն՝ ցանկք գլխոց) և առ. նմին դպրութիւնք, այսինքն՝ են սոքա չորք մատեանք, և չորեքին միոյ իրաց յիշատակարանք են, յիշեցուցիչք պատմութեանց ազգացն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ։ Այսինքն կարգ (շարունակութիւն) անցելոց իրաց, գործք և վարք մինչև ցիւրաքանչիւր ելս յաշխարհէս՝ քահանայապետաց սրբոց արանց Աստուծոյ, և թագաւորաց տերանց աշխարհաց Արշակունեաց, և զօրավարաց՝ արանց անուանեաց քաջ նախարարաց, և խաղաղութեան և պատերազմի, և շինութեան և աւերածոյ, և արդարութեան և անօրէնութեան, և աստուածպաշտութեան և ամբարշտութեան. ժամանակագիր աքարեալ (այսինքն՝ սկսեալ) ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչև ի միւս վերջին ժամանակն վատթարելոյ թագաւորացն Հայոց, և ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի՝ մինչև ցայնոսիկ ի վերջինսն, որք կացին գլխաւորք եպիսկոպոսք Հայոց, մի ըստ միոջէ կարգօք թուօք և համարօք կանոնեալ դրոշմեալ նկարեցի իւրաքանչիւր գլխովք։ Եւ չորս խոստմունս (ցանկ) չորից չորեցունց դպրութեանցս յիւրաքանչիւր իւր գլուխս պատուաստեցի մինչև ի կատարած սորին»։

Այս յառաջաբանէն կը տեսնուի, թէ Բուզանդ երրորդ կ՚անուանէ իւր առաջին դպրութիւնն, ուստի կը դնէ ուրիշ երկու դպրութիւն կամ գիրք յառաջ քան զիւրն։ Թէ ինչ էին այս երկու դըպրութիւնք՝ կ՚իմացունէ Բուզանդ առաջին գլխոյն մէջ։ Ըստ Բուզանդայ կային երկու պատմութիւնք, մին՝ Թադէոսի առաքելոյն քարոզութենէն մինչև յակամայ դարձն առաքելասպան Սանատրկոյ և ի մահ առաքելոյն, երկրորդն՝ ի վարդապետութենէն Գրիգորի մինչև ի կատարումն հանգստեան նորա և Տրդատայ։ Այս անցեալ ժամանակաց պատմութիւնք, ըսէ Բուզանդ, գրուեցան յայլոց. մեք հոս համառօտիւ կը յիշենք, կապելու համար մեր պատմութիւնն երկու առաջին պատմութեանց հետ։ Այսպէս ինչ որ առաջին և միջին է և գրուեցաւ ի ձեռն այլոց՝ հոս կը մտնէ իբրև հուն կամ անցք ի վերջին պատմութիւնն, որ է մերն։ Զայս պարտ է իմանալ Բուզանդայ Ա. գլխէն, որ այնպէս մութ և կրճատ է, մինչև յիրաւի համարել մեզ զայն աղաւաղեալ։ Ահա բանք Բուզանդայ. «Ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ և նորուն յելից և ի մարտիրոսութենէն մինչև ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի և իւրոյ հանգստեանն, և յառաքելասպան Սանատրկոյ արքային

մինչև յակամայ հնազանդելն հաւատոյն, և ի Նորա (կարգա՝ ի կատարումն) հանգստեան արքային Տրդատայ, զանցեալ իրացն զառաջնոցն զվարս լաւացն և որ զնոցուն հակառակ ընդդիմակաց՝ այն ամենայն ի ձեռն այլոց գրեցան։ Բայց և մեք ի մերում աստ եդաք փոքր ի շատէ ի կարգի պատմութեան, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրացն կարգին։ Վասն զի է ինչ մեր պատմութիւն, որ առաջին է, և է ինչ, որ վերջին է. իսկ որ միջին ինչ եղև՝ այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ։ Բայց զի մի՛ ի միջի մերոյ պատմութեանս ընդհատ երևեսցի հուն մի՝ նշանակեցաք. զոր օրինակ աղիւս մի կարգած ի մէջ որմոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեան։ Այս ինչ, որ ինչ յետ այսորիկ կարգի՝ աստ պատմի աստէն առ սմին»։

Զայս մթին գլուխ կամ յառաջաբան Բուզանդայ, որ, որպէս ասացաք կամ թարգմանչէն գրուած է այսպէս շփոթ և կամ, որ աւելի հաւանական է՝ աղաւաղեալ է ագէտ գրիչներէ, որք խախտելով պատմութեան կարգը, մթացուցած են իմաստը՝ պարտ է ընթեռնուլ այսպէս. «Ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ, և ի նորուն ելից և ի մարտիրոսութենէն մինչև առաքելապատն Սանատրկոյ արքային յակամայ հնազանդելն հաւատոցն, և ի վարդապետութենէն Գրիգորի և յիւրոյ հանգստենէն մինչև ի հանգիստն Տրդատայ, զանցեալ իրացն զառաջնոցն զվարս լաւացն և որ զնոցուն հակառակ ընդդիմակաց՝ այն ամենայն ի ձեռն այլոց գրեցան։ Բայց և մեք (զնոսին) ի կարգի աստ պատմութեան մերոյ եդաք փոքր ի շատէ, ոչ զանց արարեալ թողաք վասն պատշաճ իրաց կարգին։ Այսպէս է ինչ ի մերում պատմութեան, որ առաջին է, և է ինչ, որ միջին, որք ի ձեռն այլոց գրեցան. բայց զի մի՛ ի միջի մերոյ պատմութեանս ընդհատ երևեսցի հուն մի՝ նշանակեցաք, զոր օրինակ աղիւս մի կարգած ի մէջ որմոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեան։ Իսկ որ ինչ վերջինն է, այսինքն՝ որ ինչ յետ այնոցիկ կարգի՝ աստ պատմի աստէն առ սմին»։ Այսպէս կարգել պատշաճ թուեցաւ մեզ՝ զԲուզանդ ըստ Բուզանդայ ուղղելով։

Բուզանդ Բ. գլխոյն մէջ կը դնէ համառօտիւ Հայոց երկրորդ դարձին պատմութիւնն առ Տրդատաւ ի ձեռն Գրիգորի մինչև ի հանգիստ նորա, որպէս և յաջորդին նորա Արիստակեայ, նշանակելով զտեղի շիրմաց նոցա. «Ի թագաւորութեանն Տրդատայ որդւոյն Խոսրովու, լուսաւորութեամբ, հաճոյական սիրով և աստուածպաշտութեամբն հաւատոյ, ծանօթութեամբ ի ձեռն Գրիգորի որդւոյն Անակայ, մեծի քահանայի. և որոյ ընդ նմին կրսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վար-

դաւպետութեան զամենայն աւուրս կենաց իւրոց մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ։ Իսկ սոցա պատրաստեցան տեղիք բնակութեան և արժանի եղեալ շիրիմք հանգստեան. մեծին Գրիգորի՝ ի Դարանաղեաց գաւառին, ի գիւղն որ անուանեալ կոչի Թորդան, և սրբոյն Արիստակեայ որդւոյ նորա յետ խոստովանութեան մահուն իւրոյ, և տարան զնա ի Ծոփաց գաւառէ, և եդին զնա յԵկեղեաց գաւառի ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ»։ Զայս գլուխ ևս, որ նոյնպէս մութ է և կրճատ՝ պարտ է ընթեռնուլ այսպէս. «Լուսաւորութիւնն Հայոց եղև ի թագաւորութեանն Տրդատայ որդւոյն Խոսրովու, այն որ հաճոյական սիրով հնազանդեցաւ աստուածպաշտութեան հաւատոց ծանուցմութեամբ ի ձեռն Գրիգորի, Անակայ որդւոյն, մեծի քահանայապետի. յետ որոյ կրտսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեան զամենայն աւուրս կենաց իւրոց մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ։ Սոցա պատրաստեցան տեղիք բնակութեան և շիրիմք հանգստեան, մեծին Գրիգորի՝ ի Դարանաղեաց գաւառին, ի գիւղն որ անուանեալ կոչի Թորդան, և սրբոյն Արիստակեայ որդւոյ նորա՝ յԵկեղեաց գաւառի, ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօրն իւրոյ, ուր և յետ խոստովանութեան մահուն իւրոյ՝ տարան զնա ի Ծոփաց գաւառէ։

Յայտնի է ուրեմն, թէ առ Բուզանդաւ կային երկու գիրք գրեալք յառաջ քան զնա, անտարակոյս յունարէն լեզուաւ։ Առաջին պատմութիւնն էր թերևս վկայաբանութիւն ինչ կամ հոգևոր վէպ առաջնոյ դարձին Հայոց ի ձեռն Թադէոսի, նման Ղերուբնայի ումեմն ընծայեալ ասորական պատմութեան զդարձէն Աբգարու. իսկ երկրորդն էր վկայաբանութիւն Գրիգորի և Հռիփսիմեանց, յորոց շինուած է Ագաթանգեղոսի վկայաբանական մասն հանդերձ պատմութեամբ Գրիգորի և Տրդատայ։ Այս երկու պատմութեանց վերայ, (որ թուի թէ յորգի էին ի մէջ Հայոց առ Բուզանդաւ, իբրև պատմութիւնք քրիստոնէութեան ժամանակին Հայոց, քանզի հեթանոսութեան ժամանակէն չունէին փոյթ քրիստոնեայ նախնիք մեր) յաւել Բուզանդ զիւրն՝ իբրև երրորդ, բաժանեալ ի չորս դպրութիւնս, զորս կոչեց ոչ Առաջին, Երկրորդ, Երրորդ, Չորրորդ, այլ իբր մասն առաջին երկուց՝ Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ, Վեցերորդ։

Այս տեսութեամբ կարեն, թուի մեզ, անհետանալ այն բուն մեկնութիւնք, թէ առաջին երկու դպրութիւնք ակնարկեալք ի Բուզանդայ՝ ունէին զպատմութիւն Հայոց հեթանոսութեան ժամանակին, յօրինեալ ի նմին իսկ Բուզանդայ. թէ բանք Խորենացւոյն, «ի բայ բանից և անոճ իմն յաղագս Հայկայ և նմանեացն կարգէ»՝

կ՚ակնարկեն այն պատմութիւնը, և թէ Բուզանդարանն ոչ այլ ինչ էր, եթէ ոչ՝ Դիոդորոսի Սիկիլիացւոյն մատենադարանին նման այլ և այլ ազգերու պատմութեան հաւաքածոյ, ուր կը գտնուէր նաև հնագոյն պատմութիւնն Հայոց։

ԶԱնատրկոյ և զԱնակայ, որոց մէն մի ունի զիւր դեր ի պատմութեան կրկին դարձին Հայոց՝ խօսուած է այլուր. հոս այսչափ միայն ասել բաւական է, թէ Բուզանդ այս ակնարկութիւններն առած է հաւանօրէն այն երկու վկայաբանական գրուածներէն, զորոց ասէ թէ կային իբրև առաջին և երկրորդ դպրութիւն յառաջ քան զիւրն։

Ժ. Իբր Հայոց առ Արշակունեօք կ՚երթան այնպէս կից ընդ Հռոմայեցւոյն, զի առանց գիտելոյ զպատմութիւն այս վերջնոց՝ գիտել որպէս պարտն է զՀայոցն՝ չէ հնար։ Կայ միւս ևս մեծ սխալ, զոր ունէին նախնիք մեր և զոր ունիմք մեք ևս, այն է կարծել, թէ միջամտութիւնն Հռոմայեցւոց յիրս Հայոց եղև վնասակար այս վերջնոց։ Եթէ քաջ միտ դնենք դիպաց մեր պատմութեան՝ կը տեսնենք, թէ մին ի պատճառաց, և թերևս գլխաւորն, տակաւ նուազելոյ և ջնջելոյ հարստութեանն Արշակունեաց ի համարոյ ազգաց՝ եղև ոչ եթէ զօրանալն, այլ մանաւանդ տկարանալն ազդեցութեան Հռոմայեցւոց ի վերայ Հայոց։ Այն ազդեցութիւն էր, որ պահեց այնչափ երկար զՀայս ինքնօրէն ազիկամիս և ունեցաւ Հայոց համար ամբաւ օգուտներ, յորոց մին է քրիստոնէութիւնն և արդիւնք նորա՝ հայերէն գիրն և դպրութիւն։ Առանց նկատելոյ զայն ազդեցութիւն՝ անհնար է մեկնել, թէ ինչպէս հայ մթնոլորտի մէջ, իսկիւ և ի բնէ արևելեան, կրցաւ ոչ միայն ծագել, այլև աճել այնպիսի երևոյթ մի, որոյ բուն երկինքն էր, գէթ յայնժամ՝ արևմտեանն։ Եթէ պարտիմք ընդունել իբրև պատմական և շատերէ ընդունուած, թէ քրիստոնէութիւնն գտաւ ինքեան նպաստաւոր հին արևմտեան աշխարհի այն մասը միայն, որ կը գտնուէր եթէ ոչ ընդ իշխանութեամբ, գէթ ընդ ազդեցութեամբ հռոմէական պետութեան, մինչ տեղիք, որ արտաքոյ էին այն ազդեցութեան կամ հակառակորդ այնմ՝ մնացին զուրկ ի նըմանէ՝—պարտիմք ընդունել, թէ նաև Հայաստան կը հանդիպէր նոյն բախտին, եթէ չէր վաղուց մտած ընդ հռոմէական ազդեցութեամբ։ Ո՞չ ապաքէն հռոմէական ազդեցութեան արդիւնք են, զի Տրդատ, երկար ժամանակաւ կրթեալ ի մէջ Հռոմայեցւոց (ըստ աւանդութեան ասեմք), «Յունական աշխարհական դպրութեանն յառաջագոյն տեղեակ» (Ագաթ. ԾԻԴ, որ չէ անհաւանական), դաշնակից նոցա և ի ձեռն նոցա տիրեալ իւր հայրենի աշխարհին կամ հաստատեալ՝ լինի առաջին քրիստոնեայ թագաւոր Հայոց, և այս գրեթէ

միևնոյն ժամանակ ընդ առաջին քրիստոնեայ կայսեր։ Վերջին և կատարեալ յաջողութիւն Հայ ալբուբենին կը պատմուի լեալ ազդեցութեամբ և ըստ օրինակի յունականին։ Հայաստանեայց եկեղեցւոյ կրօնական և եկեղեցական յերիւրուածն կ'ելլէ յունական եկեղեցւոյ ծոցէն իբրև ծնունդ նորա։ Պատմագրութիւնն իսկ, յոյն-հռոմէական հանճարոյ գիւտ՝ կ'սկսի Հայոց մէջ ի ձեռն այնպիսի անձանց, որ են «Հայրենի արուեստիւ հոռոմարէն և յունարէն ուսեալ դըպրութիւն» (Ագաթ. Յաջբ.), և կամ «ազգաւ Հոռոմ»։ Յոյն-հռոմէական ազդեցութեան ոչ զօգուտն միայն · այլև զհարկը՝ գիտէր գոնէ Հայոց կղերական մասն, զորմէ յիրաւի է ասել՝ ինչ որ ասացաւ զմեծէն Սահակայ—«Զյունովք գլեալ խորհրդովն»։ Զյարումն Հայոց յարևմուտս խոստովանեցաւ առաջի Պերոզի Գիւտ կաթողիկոս, ամբաստանեալ իբրև մէտ ի Յոյնս. «Այլ որ ասեն, թէ երթևեկք նորա (են) ի Հոռոմս՝ ոչ ըստ դորա կարծեաց և խօսից այդպէս են իրքն, այլ վասն զի զդպրութիւն գիտութեանս մերոյ և զիմաստ բանաւոր ուսմանց յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ, և են իմ անդ ծանօթք բազում և ուսումնակիցք. այլ և զկերպարան հանդերձիցս զոր ունիմքս մեք՝ անտի գնեմք» (Փարպ. ԿԴ.)։ Այն անցեալ հռոմէական ազդեցութեան շնորհ է ապաքէն, զի այսօր Հայն, մին ի տկարագոյն անկեալ ցեղից՝ կը պարծի իբրև անդամ եւրոպական քրիստոնեայ մարմնոյն, և ունի գիր և դպրութիւն եւրոպական ոճով, մինչ համազգին նորա և դրացին, անկախ, այլ բարբարոս Պարսիկն՝ անմասն է յերկոցունց միանգամայն։ Այս տեսութեամբ սկսինք զպատմութիւնն Արշակունեաց խառն ընդ հռոմէականին և ընդ պարթևականին։ Պատճառ սորին յայտնի է. Հայոց այս երկրորդ հարստութիւնն, որ կը կոչուի Արշակունեաց, ինչպէս տեսանք՝ սկսաւ Հայոց հին Արշակունի, այն է թագաւորական ցեղիւ, և ինչպէս պիտի տեսնենք յետոյ՝ յետ ունելոյ զգահն առ ժամանակ մի՝ պատուաստեցաւ ուրիշ թագաւորական, այն է Պահլաւ ցեղիւ, որ տևեց մինչև ի վախճան այսր հարստութեան։ Որովհետև առաջին ցեղն սկսաւ ի զօրանալ հռոմէական ազդեցութեան յԱսիա, և երկրորդն ի զօրանալ պահլաւական ազդեցութեան, իբրև ոսոխի հռոմէականին, և Հայք ունեցան անդադար գործ ընդ այս երկուց՝ հարկ է խօսել նախ զսոցանէ երկոցունց, այնչափ միայն սակայն, որչափ հարկաւոր է ի գիտութիւն մերոյն, քանզի նպատակ մեր չէ տալ կատարեալ հռոմէական և կամ պարթևական պատմութիւն, այլ, որչափ մարթ է, կատարեալ Հայ պատմութիւն։



# ԳԼՈՒԽ Դ.

## ՀՌՈՄ. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՆՈՐԱ ՀԱՄԱՌՕՏԻՒ։

*1. Հռոմ։ 2. Պատմութիւն վեցհարիւրամեայ ժամանակի։*

**1.** Հռոմ, ի սկզբան մայրաքաղաք քաղաքակիրթ աշխարհի, և ապա միջավայր քրիստոնէութեան, և այժմ թագաւորանիստ քաղաք Իտալիոյ, անուանի հոյակապ շինուածովք և անթիւ յիշատակօք պատմութեան և գեղեցիկ արուեստից՝ է ի միջին Իտալիա, ի գաւառին, որ կը կոչուէր Լատիոն, յորմէ Լատին անունն, որ կը տրուի Հռոմայեցւոց, մանաւանդ լեզուին նոցա։ Հռոմ շինեցաւ ըստ աւանդութեան 753 ամօք յառաջ քան զՔրիստոս, առ Տիբեր գետով, իբր 19 հազարամէտր յարեւելից հիւսիսոյ փոքու քաղաքին Ոստիայ, ուր Տիբերիս գետ կը թափի ի ծովն Տիւրենական։ Թողլով սկզբան պատմութիւնը, որ կիսով չափ առասպելական է՝ առնունք համառօտիւ յաջորդ վեցհարիւրամեայ ժամանակի պատմութիւն, որ լի է ներքին և արտաքին կռիւներով։

**2.** *Պատմութիւն վեցհարիւրամեայ ժամանակի։* Իշխանութիւն քաղաքին, որ էր ի սկզբան թագաւորութիւն՝ բարձաւ 509-ին արտաքսմամբ վերջին բռնաւոր թագաւորին Տարկուինեայ, Գոռոզն կոչեցելոյ, և վարչութիւնն անցաւ ծերակուտին, որ կար արդէն առ թագաւորութեամբ իբրև խորհուրդ կամ ժողով աւագանւոյ ի պատրկաց, այսինքն յազնուականաց, քանզի Հռոմի ժողովուրդն ի սկզբանէ անտի կը բաժնուէր երկու, ազնուական կամ պատրիկ և ռամիկ։ Իսկ և իսկ ընդ տեսչութեամբ ծերակուտին հաստատուեցան երկու տարևոր իշխանք, որ կ'ընտրուէին ի միջոյ ազնուականաց՝ բդեշխ կամ հիւպատ անուամբ (ի սկզբան կոչուէին պրետորք)։ Բդեշխից հետ դրուեցան երկու հազարապետք, վերակացուք հասարակաց գանձուն՝ նոյնպէս ի միջոյ ազնուականաց։ Այսպէս թագաւորութիւնն փոխուեցաւ յազնուապետութիւն։ Իբր 500-ին հաստատուեցաւ դիկտատորութիւնն, որ էր բացարձակ իշխանութիւն, որ կը տրուէր միում ումեք իբրև թագաւորի, և կը տևէր վեց ամիս (միայն դժուարին ժամանակներ)։

Ազնուականք, յորոց ձեռս էր ամէն իշխանութիւն՝ վաղ հարըստացան և կը բռնանային ռամկին վրայ, ուստի ծագեցան ընդհուպ ներքին խռովութիւնք, և հաստատուեցան ռամկապետք (տրիբունք) և շինուածապետք։ Ռամկապետաց պաշտօնն էր պաշտպան կենալ իրաւանց ռամկին, իսկ շինուածապետացն՝ հսկել հասարակաց պարենին, մանաւանդ ցորենոյ առատութեան և դիւրագնութեան։ Ռամիկն այսչափ զօրանալով՝ սկսաւ խնդրել արտօնութիւններ, որ ցայնժամ ազնուականաց միայն անկ էին։ Շատ երկիրներ կամ արտեր, որ հասարակաց էին և տրուած էին ազնուականաց իբրև ի վարձու, մշակել և տալ տասանորդ հասարակաց գանձուն՝ սկսած էին համարուիլ իբրև ստացուած նոցա։ Ռամիկն որոյ երկիրն փոքր էր՝ սկսաւ պահանջել ագարակային օրէնք, որով տրուէր ռամկին մասն այն երկիրներէն։ Այս օրէնք, որ կոչուեցաւ Կասեան օրէնք— քանզի նախ Կասիոս հիւպատոս (485) արար այնպիսի բաժանումն— կրեց սաստիկ հակառակութիւն ազնուականներէն և մերժուեցաւ։ Նաև դատաւորական իշխանութիւնը կը վարէին ազնուականք ըստ կամի և շատ անգամ մեծ անիրաւութեամբ, ուստի ռամիկն սկսաւ պահանջել նաև գրով օրէնք։ Յետ ծանր խռովութեանց՝ ազնուականք հաճեցան այսմ, և ընտրուեցան պատրիկներէն տասն արք, որ գրեցին կամ խմբագրեցին զօրէնսն Երկոտասան տախտակաց (450). սակայն չվերցաւ բռնութիւնն, քանզի իշխանութիւնն էր միշտ ի ձեռս ազնուականաց։ Ուստի ռամիկը կը պահանջէր (445), հանդերձ արտօնութեամբ խառն ամուսնութեան, այսինքն ռամկաց ամուսնանալոյ ընդ ազնուականս՝ նաև պաշտօններու հաւասարութիւն։ 445-ին վերցաւ հիւպատոսութիւնն և հաստատուեցան խառն ազնուականներէն և ռամկէն չորս զինուորական տրիբունք, որ ունէին հիւպատոսի պաշտօն, և պատրիկներէն երկու համարակարք, որոց գործն էր ցեղերուն ազգահամարը բռնել և ազնուականաց, ծերակուտի անդամներուն իսկ՝ վարուց և գործոց վրայ հսկել։

Այս ամենայն կարգք և օրէնք ոչինչ օգնեցին. աղքատութիւն և բռնութիւն մնացին միշտ ծանրացեալ ռամկին վրայ։ Վերջապէս 376-ին Լիկինիոսի տրիբունի թելադրութեամբ առաջարկուեցաւ նոր օրէնք։ Ըստ այս օրինաց, որ կոչուեցաւ Լիկինեան օրէնք—1. պիտի հաստատուէին դարձեալ հիւպատոսք երկու, մին միշտ ռամկէն։ 2. Ազնուականաց թոյլ պիտի չտրուէր հասարակաց երկիրներէն ունենալ ժառանգութիւն աւելի քան 500 արտավարի գետին, մնացեալն պիտի բաժնուէր ռամկին։ 3. Պարտուց գումարներէն պիտի հանուէին արդէն հատուցեալ տոկոսիքն։ Օրէնքն ընդունուեցաւ մեծ դժուարութեամբ 366-ին, և ռամիկն առ սակաւ սակաւ եղաւ

*մասնակից ամէն պատուոյ և իշխանութեան* (366—333), *դիկտատորութեան, համարակարութեան, հիւպատոսութեան, քրմապետութեան անգամ, և եղաւ կատարեալ հաւասարութիւն։ Այսպէս ազնուապետութիւնն փոխուեցաւ յընկերհաշտութիւն (հանրապետութիւն)։ Թէպէտ առերլութիւնն և հակառակութիւն ի մէջ ազնուականաց և ռամկին չվերցաւ ի սպառ մինչև կայսրութիւնը՝ սակայն քաղաքային առաքինութիւն և զինուորական քաջութիւն սկսան այնուհետև։ Ի միջոցի իբրև* 220 *ամաց* (363—133) *Հռոմ եղաւ աշխարհակալ տէրութիւն։ Նուաճեցան Ստորին Իտալիա* (342—200), *Յունական գաղթականութիւնքն յԻտալիա, ինչպէս Տարենտոն, Սիրակուսա և բովանդակ Սիկիլիա* (280—272). *Սիկիլիոյ պատճառաւ, որ կը վերաբերէր Կարքեդոնացւոց՝ ծագեցաւ Պունիկեան պատերազմն, առաջին, երկրորդ, երրորդ, որ վերջացաւ կործանմամբ Կարքեդոնի* (263—146). *Վերին Իտալիա, մինչև Ալպեան գօտին* (226—220), *Սպանիա* (216—206), *որ նոյնպէս էր Կարքեդոնացւոց. պարտութեամբն Անտիոքոսի մեծի* (190) *Փոքր Ասիա անկաւ ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց. Մակեդոնիա, Յունաստան, Լիւբիկէ նուաճեցան* (148—130), *Պերգամա տրուեցաւ նոցա կտակաւ* (133)։

*Հռոմէական պետութեան այս մեծ իշխանութիւնն, ամբաւ հարստութիւնք, որ եկան նուաճեալ երկիրներէ՝ փոխանակ լաւացունելու Հռոմի ժողովրդեան վիճակը՝ վատթարացուցին մանաւանդ։ Ոմանք միայն դիզելով ամբաւ մեծութիւն՝ առին ամէն իշխանութիւն ի ձեռս, և կը գործէին անհնարին բռնութիւն և անիրաւութիւն, ընդ որովք կը հեծէր ժողովուրդն։ Ժողովրդեան բարեկամներէն ոմանք, ինչպէս Գրակքեանք, ջանացին չափ դնել հարստութեան և բռնութեան այն ազնուականաց, բայց հալածուեցան չարաչար և սպանուեցան* (121)։ *Մարիոս՝ ռամկին, և Սուղղա՝ ազնուականաց կողմանէ՝ ելան ոսոխ իրարու և թափեցին շատ անմեղ արիւն։ Սակայն այս երկու կատաղի զօրավարք մեծ նպաստ մատուցած էին ի պատերազմունս Նումիտիոյ* (118—106) (*թագաւորութիւն յԱփրիկէ յարևմտից Կարքեդոնի*) *և Գերմանաց* (113—103), *ի պատերազմին դաշնաւորաց* (91—88), (*իտալացի ժողովուրդք, Սամնիացիք, Մարսք, զորս Հռոմայեցիք ընելով իւրեանց դաշնակից՝ խոստացած էին տալ նոցա հաւասարութիւն, և ապա զլացած*)։ *Կը մնար Հռոմայեցւոց մի միայն ոխերիմ թշնամի, այն էր Միհրդատ արքայ Պոնտացւոց, և Տիգրան մեծ արքայ Հայոց, որոց միացեալ զօրութիւնն կ՚սպառնայր մեծ վտանգ Հռոմայեցւոց ազդեցութեանն յԱսիա։ Այս վտանգին բնական արդիւնքն էր իբր քառասնամեայ պատերազմն ընդդէմ Միհրդատայ և Տիգրանայ։ Պարտու-*

*թեամբ այս երկուց վերջնոց և նուաճմամբ երկրին Ասորւոց մինչև յԵփրատ՝ Հռոմ, որ էր եւրոպական պետութիւն՝ եղաւ միանգամայն ասիական, ունենալով ինքեան դրացի զՀայս, որ էին արդէն կիսով չափ ընդ Հռոմայեցւովք, և զՊարթեւս, որոց իշխանութիւնն կը հասնէր յայնժամ* (64) *մինչև ցԵփրատ։ Զայսու ժամանակաւ հռոմէական հանրապետութիւնն կը փոխուի յազնուապետութիւն, և իշխանութիւնը կը բաժնուի եռապետաց, այսինքն երեք իշխանաց։ Առաջին եռապետք եղան Պոմպէոս, Կեսար և Կրասոս* (59 *նախ քան զՔր.*)*, և ապա Հոկտաւիանոս, Անտոնիոս և Լեպիդոս* (42)*։ Հռոմայեցիք, որ յետ մահուն Միհրդատայ և պարտութեանն Տիգրանայ չունէին յԱսիա այլ ոսոխ բայց միայն զՊարթեւս՝ խորհեցան զնոսա ևս խոնարհեցունել։ Զայս փորձեց նախ Պոմպէոս, յետ առնելոյ դաշնակից զՏիգրան, երթալով Պարթևաց վրայ. բայց հասնելով մինչև Տիգրիս՝ արգելուեցաւ ներքին կռուոց պատճառաւ։ Զնոյն փորձեցին աւելի յանդգնաբար Կրասոս և Անտոնիոս, բայց չյաջողեցան, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Եռապետութիւնն չտևեց ընդ երկար։ Վերջին եռապետներէն Հոկտաւիանոս և Անտոնիոս — քանզի Լեպիդոս մերժուած էր — տուին պատերազմ ընդ միմեանս, մինչև պարտութեամբն և մահուամբ Անտոնիոսի ի ճակատուն Ակտիոնի* (31)*՝ վերցաւ եռապետութիւնն, և Հոկտաւիանոս եղաւ ինքնակալ կայսր՝ Օգոստոս Հոկտաւիանոս անուամբ։ Այսպէս ազնուապետութիւնն ևս փոխեցաւ ի կայսրութիւն։*



# ԳԼՈՒԽ Ե.

## ՀՌՈՄԱՅԵՑԻ ԿԱՅՍԵՐՔ։

*1. Օգոստոս Հոկտաւիանոս: 2. Յաջորդք նորա:*

**1.** Օգոստոս Հոկտաւիանոս (31 նախ քան զՔր.—14 յետ Քր.), էր եղբօրորդի և որդեգիր Կեսարու։ Առ սովաւ բոլոր Եւրոպա, բաց ի հիւսիսային բարբարոս մասնէ, նոյնպէս հիւսիսային Ափրիկէ և Եգիպտոս, բաց ի միջին և հարաւային անծանօթ վայրեններէ՝ էին արդէն ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց։ Գալով յԱսիա՝ ամբողջ Փոքրն Ասիա և յառաջակողմն Ասիոյ մինչև Եփրատ՝ էր նոյնպէս ընդ Հռոմայեցւովք։ Հայաստան, մեծազօրին Տիգրանայ իշխանութեան երկիրն, էր նոյնպէս ընդ ազդեցութեամբ նոցա։ Եթէ կար ազգ ոսոխ Հռոմայ՝ այն էր Պարթև ազգն, և այն ևս արդէն տկարացեալ և խոնարհեալ առաջի Հռոմայ, ինչպէս պիտի տեսնենք։ Հիւսիսային բարբարոսներէն հռոմէական պետութեան եւրոպական մասին սահմանակից Գերմանք միայն կը խլրտէին, բայց նոքա ևս ինչ էին այն հզօր պետութեան առջև։

Օգոստոսի գերդաստանէն մեր պատմութեան համար յիշուելու արժանի անձինք են. 1. Տիբեր, ուրջու (խորթ որդի) Օգոստոսի, ի Լիւեայ կնոջէն նորա, առաջին ամուսնութենէ այս վերջնոյ. 2. Գերմանիկոս, եղբօրորդի Տիբերի, այսինքն՝ որդի եղբօր նորա Դրուսոսի, և 3. Գայիոս, թոռն Օգոստոսի ի դստերէն նորա Յուղեայ։ Օգոստոս յետ մահուն Գայիոսի, զոր կը սիրէր՝ տալով Տիբերի որդեգրել (սահմանել ժառանգ) զԳերմանիկոս՝ ինքն ևս առնէ որդեգիր զՏիբեր (Կղաւդիոս Ներոն)։

**2.** *Յաջորդք Օգոստոսի:*

1. Տիբեր (14--37)։
2. Կաղիգուղա, որդի Գերմանիկոսի (37—41)։
3. Կղաւդիոս, հօրեղբայր Կաղիգուղայ (41– 54)։
4. Ներոն, առաջին ամուսնութենէն Ագրիպպինայ, դստեր Գերմանիկոսի (54—68)։

Յետ մահուն Ներոնի, մինչև յարեւմուտս Վինդէքս, Գաղբա, Օթոն և Վիտեղղիոս իրարմէ կը յափշտակէին աթոռը (68—69)՝ յԱսորիս զօրքը կ'ընտրէ

5. զՎեսպասիանոս (69—79)։
6. Տիտոս, որդին (79—81)։
7. Դոմետիանոս, եղբայր նորա (81—96)։
8. Ներուա (96—98)։
9. Տրայիանոս (98—117)։
10. Ադրիանոս (117—138)։
11. Անտոնինոս Պիոս (138—161)։
12. Մարկոս Աւրեղիոս (161—181), որում բարձակից եղաւ ի սկզբան Ղուկիոս Վերոս (161—169)։
13. Կոմոդոս, որդի Մարկոսի Աւրեղեայ (180—192)։

Յետ մահուն Կոմոդոսի ընտրուեցան (193) զօրականէն կայսր՝ Պերտինաքս և Յուլիանոս՝ ի Հռոմ, Նիգէր՝ յԱսորիս, Ալբինոս՝ ի Բրիտանիա, Սեպտիմոս Սևերոս՝ ի Լիւրիկէ։ Սկսաւ քաղաքային պատերազմն, և յաղթեց

14. Սեպտիմոս Սևերոս (193—211)։
15. Գետա և Կարակաղղա, որդիք Սեպտիմոսի։ Կարակաղղա տալով սպանանել զեղբայրն՝ կը թագաւորէ (211—217)։
16. Մակրինոս (217--218)։ Նոյն տարին
17. Հեղիոգաբաղոս (217—222)։
18. Աղէքսանդրոս Սևերոս (222—235)։
19. Մաքսիմինոս Թրակացի (236—238)։ Առ կենդանութեամբ նորա կ'ընտրուին Գորդիանոսք Ա. և Բ, հայր և որդի, բայց կը յաղթուին Մաքսիմինոսէ, և կ'ընտրուին՝ Պուպիենոս Մաքսիմոս և Կեցիլիոս Բալբինոս, բայց սոքա ևս կ'սպանուին, և կ'ընտրուի
20. Գորդիանոս Գ, թոռն Գորդիանոսի Ա. (238—244)։
21. Փիլիպպոս Արաբացի (244—249)։
22. Դեկոս (249—251)։
23. Գաղոս Տրեբոնիանոս (251—253)։
24. Վաղերիանոս (253—259)։
25. Գաղիենոս, որդին (259—268)։ Առ սովաւ քայքայեցաւ տէրութիւնն. շատ նահանգներու կուսակալներ եղան ինքնագլուխ, որ կը կոչուին Երեսուն բռնաւորք։
26. Կղաւդիոս Բ. (268—270)։
27. Աւրեղիանոս (270—275)։
28. Տակիտոս (275—276)։
29. Փղորիանոս (276)։

30. Պրոբոս (276—282)։

31. Աւրեղիոս Կարոս (282—283)։

32. Կարինոս և Նումերիանոս, որդիք Կարոսի (283—284)։

33. Դիոկղետիանոս (284—305)։ Սա ընտրեց ինքեան գահակից զՄաքսիմիանոս (286—305), և բաժնուեցաւ տէրութիւնն։ Արևելք եղաւ Դիոկղետիանոսի, և արևմուտք՝ Մաքսիմիանոսի։

Երկոքին կայսերք տեսնելով զանձինս անզօր առ ի զդէմ ունել սահմանակից ազգաց, որ սկսած էին զօրանալ՝ ընտրեցին ինքեանց մէն մի օգնական Կեսար անուամբ, մինչ ինքեանք կոչուեցան Օգոստոս։ Դիոկղետիանոս ընտրեց զԳաղերիոս, և Մաքսիմիանոս՝ զԿոստանդ Քլորոս, զհայրն մեծին Կոստանդիանոսի, Կղաւդեայ Բ-ի թոռմէն։ Ապստամբեալ և գրեթէ բաժանեալ նահանգք նուաճեցան. Մաքսիմիանոս հնազանդեցուց զԱփրիկէ (292), Կոստանդ՝ զԲրիտանիա (296), Դիոկղետիանոս՝ զԵգիպտոս (296), Գաղերիոս յաղթելով Պարսից՝ ընդարձակեց հռոմէական Ասիոյ սահմանը մինչև ի Տիգրիս (297)։

Յամին 305 Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս օգոստոսք կը հրաժարին, Գաղերիոս և Կոստանդ, կեսարք՝ լինին օգոստոս. և Մաքսիմինոս (Դայա) և Սևերոս կ'ընտրուին կեսար։

Այս չորս իշխանաց բաժիններն էին—Կոստանդայ՝ արևմուտք, Սևերոսի՝ Իտալիա և Ափրիկէ, Մաքսիմինոսի՝ Ասորիք, Պաղեստին և Եգիպտոս, Գաղերիոսի՝ Փոքր Ասիա, Լիւրիկէ և Թրակիա։

Յետ մահուն Կոստանդայ (306) կը յաջորդէ նմա որդին Կոստանդիանոս։

Յամին 306 Մաքսիմիանոս հրաժարեալն և որդին Մաքսենտիոս լինին հաղորդ իշխանութեանն, և թիւ իշխանացն լինի վեց —Գաղերիոս, Մաքսիմինոս, Սևերոս, Կոստանդիանոս, Մաքսիմիանոս և Մաքսենտիոս։ Թէպէտ յաջորդ տարին (307) Սևերոս կը սպանուի՝ փոխանակ նորա կ'ընտրուի Լիկինիոս (ըստ մեզ՝ Լիկիանէս)։ Այս իշխաններէն չորք հետզհետէ մեռան կամ սպանուեցան, և մնացին (313) երկուք միայն, Լիկինիոս և Կոստանդիանոս։ Իբր ութ տարի յետոյ (322)՝ կը գրգռին երկու կայսերք իրարու դէմ ի պատերազմ։ Լիկինիոս կը յաղթուի (323), և

34. Կոստանդիանոս մեծ՝ լինի միահեծան տէր և առաջին քրիստոնեայ կայսր հռոմէական պետութեան (324—337)։

Յետ մահուն Կոստանդիանոսի մեծի կը բաժնուի տէրութիւնն յերիս որդիս նորա.

35. Կոստանդիանոս Բ. (337—340) կ'առնու զԳաղիա,

36. Կոստանդ (337—361) զարևելս, և

37. Կոստաս (337—350) զԻտալիա և զԱփրիկէ։

Յետ մահուն Կոստանդիանոսի Բ. բոլոր արևմուտք կը միանան ընդ իշխանութեամբ Կոստասայ, և այսպէս հռոմէական պետութիւնն լինի երկու, արևմտեան և արևելեան։

Յետ մահուն Կոստասայ դարձեալ կը միանայ տէրութիւնն ընդ ձեռամբ Կոստանդայ, որուն կը յաջորդէ

38. Յուլիանոս եղբօրորդի մեծին Կոստանդիանոսի (361—363)։

39. Յովիանոս (363—364)։

40. Վաղենտիանոս (364—375)՝ յարևմուտս, և եղբայր նորա

41. Վաղէս (364--378)՝ յարևելս, և այսպէս դարձեալ կը բաժնուի տէրութիւնն։

Վաղենտիանոսի կը յաջորդէ յարևմուտս, որդին

42. Գրատիանոս (375—385)։

Վաղեսի կը յաջորդէ յարևելս՝

43. Թէոդոս Ա. մեծ (379—395), որ և միացուց դարձեալ տէրութիւնը յետ մահուն Գրատիանոսի։

Թէոդոսի յաջորդեցին երկու որդիք նորա

44. Ոնորիոս (395—423) յարևմուտս, և

45. Արկադէոս (395—408) յարևելս, որում յաջորդեց յարևելս՝

46. Թէոդոս Բ. փոքր (408—450)։ Առ սովաւ վերջացաւ Հայոց Արշակունեաց թագաւորութիւնն (428), ուստի և հոս դադրեցունելով մեր այս համառօտ տեսութիւնն Հռոմայեցւոց պատմութեան վրայ՝ առնունք զՊարթևացն և զՊարսից։



# ԳԼՈՒԽ Ջ.

## ՊԱՐԹԵՒՔ։

*1. Պարթեւք: 2. Գործ նոցա ընդ Սելեւկեանս: 3. Ընդ Հռոմայեցիս: 4. Պահլաւ տոհմն:*

**1.** Ոչինչ ընդհատ ի Հռոմայեցւոց Պարթեւք և յետ նոցա Սասանեանք ունեցան գործ ընդ Հայոց. ուստի հոս հարկ է մեզ դնել նաև զպատմութիւն սոցա, որչափ հնար է համառօտիւ, ի քաջ տեղեկութիւն մեր ազգային պատմութեան։

Մեր պատմութեան առաջին մասին մէջ, էջ 223—234, խօսեցանք զՊարթեւաց այնչափ միայն՝ որչափ պիտոյ էր մեր յայնժամու խնդրոյն, որ էր ցուցանել, թէ թագաւորեցուցանելն Արշակայ քաջի, ըստ Խորենացւոյն, զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ Հայոց և սերելն հայ Արշակունեաց ի սմանէ՝ չունի ամենեւին պատմական հիմն։ Հիմնադիր Պարթեւական պետութեան է Արշակ Ա, առանձինն անուամբ՝ Դարա (Դարեհ կամ Զարեհ), ի ցեղէն Դարեհի Կոդոմանոսի վերջին թագաւորին Պարսից Աքեմենեանց, ինչպէս կը վկայեն գրեթէ միաբան արեւելեան պատմիչք (Ծէֆէրի, Հապիպ Ուսսիյէր, Թէպէրի, Պէճճէթ, Ծէհար և այլք. տես Ա. մասն, էջ 227, և Կոպինոյ, Պատմ. Պարս. Հտ. Բ. էջ 479, և 550—553), և այս պատճառաւ կը կոչեն զցեղն Աշկանեան, այն է թագաւորական, թէպէտ թագաւորաց թիւը կը դնեն 12—22 տարբեր անուններով, ինչպէս մեր Խորենացին, հաւանականապէս արեւելեան աղբերէ առնլով՝ կը դնէ չորեքտասան։ Հաւանականագոյնն է սակայն երեսուն կամ երեսուն և մի ըստ դահեկանաց նոցա, որոց հետեւեցանք և մեք (տես Ա. մասն, էջ 226), և դարձեալ կը դնենք հոս համդերձ հաւանական ժամանակօք նոցա։

Արշակ Ա, Դարեհ ըստ արաբացի մատենագրաց<br>(255—253 նախ ք. զՔր.)։

Արշակ Բ, Տրդատ (253—217)։

Արշակ Գ, Արտաւան (217—197)։

Արշակ Դ, Պրապաղ (197—182)։
Արշակ Ե, Հրահատ Ա. (182—174)։
Արշակ Զ, Միհրդատ Ա. (174—138)։
Արշակ Է, Հրահատ Բ. (138—127)։
Արշակ Ը, Արտաւան Բ. (127—114)։
Արշակ Թ, Միհրդատ Բ. (114—86)։
Արշակ Ժ, (86—76)։
Արշակ ԺԱ, Սանատրուկ (76—68)։
Արշակ ԺԲ, Հրահատ Գ. (68—58)։
Արշակ ԺԳ, Միհրդատ Գ. (58—54)։
Արշակ ԺԴ, Որոդէս Ա. (54—36)։
Արշակ ԺԵ, Հրահատ Դ. (36—1 յետ Քր.)։
Արշակ ԺԶ, Հրահատակ (1—2)։
Արշակ ԺԷ, Որոդ Բ. (2—4)։
Արշակ ԺԸ, Վոնոն Ա. (4—14)։
Արշակ ԺԹ, Արտաւան Գ. (14—44)։
Արշակ Ի, Վարդան (44—47)։
Արշակ ԻԱ, Գոտարզ (47—50)։
Արշակ ԻԲ, Վոնոն Բ. (50)։
Արշակ ԻԳ, Վաղարշ Ա. (50—90)։
Արշակ ԻԴ, Բակուր Ա. (90—108)։
Արշակ ԻԵ, Խոսրով (108—121)։
Արշակ ԻԶ, Վաղարշ Բ. (121—149)։
Արշակ ԻԷ, Վաղարշ Գ. (149—191)։
Արշակ ԻԸ, Արտաւան Դ. (191—199)։
Արշակ ԻԹ, Բակուր Բ. (199—209)։
Արշակ Լ, Վաղարշ Դ. (209—216)։
Արշակ ԼԱ, Արտաւան Ե. (216—226)։

**2.** Պարթեւք ի սկզբան մինչեւ ի Հրահատ Բ, այն է 255—127, ունեցան գրեթէ անդադար գործ ընդ Սելեւկեանս։ Առ Հրահատաւ Բ. (Արշակ Է, 138—127) Պարթեւաց տէրութիւնը կը հասնէր մինչեւ Եփրատ։ Հրահատ այնչափ զօրացաւ ընդդէմ Սելեւկեանց առ Դեմետրիւ Բ. Նիկատորաւ (146—125), մինչեւ մերձ էր մտանել յԱսորիս, մինչ յարձակումն Սկիւթացւոց (Պահլաւ տոհմին, որ վաղուց կը տիրէր ի Բակտրիա, Ա. մասն, էջ 227) ստիպեց զՀրահատ դառնալ յետս։ Առ յաջորդօք Հրահատայ Բ-ի, այն է յԱրտաւանայ Բ. (Արշակ Ը, 127—114) մինչեւ Հրահատ Գ. (Արշակ ԺԲ, 68—58), որ կը հանդիպի Միհրդատայ պատերազմներուն ժամանակին՝ երբ 60 տարի Պարթեւք եւ էին մեծ յուզման

մէջ ներքին խռովութիւններէ և կռիւներէ ընդ Սկիւթացիս։ Հրահատ Գ. Հանդարտեցուց երկիրը և զօրացաւ, մինչև Լուկուղղոսի և Տիգրանայ խնդրել Հրահատայ օգնութիւնը, բայց Հրահատ ընտրեց պահել չէզոքութիւն։

**3.** Երբ Պոմպէոս վճարեց արևելից գործը, յաղթելով ոչ Միհրդատայ միայն, այլև Տիգրանայ՝ դարձուց զերեսս իւր ի Պարթևս։ Գաբինիոս զօրավար Պոմպէի անցնելով զԵփրատ՝ խաղաց մինչև յափունս Տիգրիսի. բայց ներքին խռովութիւնք Հռոմայեցւոց ստիպեցին զՊոմպէոս թողուլ զարշաւանն։ Թէ ինչպէս անցան Հրահատայ Գ-ի վերջին տարիներն՝ յայտնի չէ. Հրահատ կը թուի սակայն սպանեալ դաւով, որում մասնակից էին որդիք նորա Միհրըդատ և Որոդ։ Միհրդատ Գ. (Արշակ ԺԳ, 58—54) սպանուեցաւ յեղբօրէն յՈրոդայ, որ թագաւորեց իբրև Արշակ ԺԴ. (54—36)։ Առ Որոդաւ և առ յաջորդաւ նորա Հրահատաւ Դ. (Արշակ ԺԵ, 36 նախ քան զՔր.—1 յետ Քր.) եղա՛ն երկու երևելի արշաւանք Հռոմայեցւոց, Կրասոսի և Անտոնիոսի, ի Պարթևս. առաջինն վերջացաւ (53) պարտութեամբն և սպանմամբ Կրասոսի ի Սուրենայ զօրավարէն Որոդայ, երկրորդն՝ պարտութեամբն և փախստեամբ Անտոնիոսի (36—34 նախ քան զՔր.)։ Այս յաղթութիւն փքացոյց զՀրահատ Դ, մինչև խիզախել նմա ընդդէմ Հռոմայեցւոց։ Երկընչելով սակայն յՕգոստեայ, որ ի գալն յարևելս (20) կը խնդրէր հռոմէական արծուենշան դրօշներն և գերիներ, զորս առած էին Պարթևք ի պատերազմունս Կրասոսի և Անտոնեայ, սպառնալով պատերազմ, եթէ չդարձունէր զնոսա յետս՝ ոչ միայն կատարեց զխընդիրն, այլ և յորդւոց անտի Հրահատայ Դ-ի տուաւ պատանդ (20 նախ քան զՔր.)։

Յուստինոս (մատենագիր Բ. դարու, առնլով ի Տրոգոսէ Պոմպեայ մատենագրէ Ա. դարու) կու տայ մեզ այս պատմութիւնը։ «Յերեսուն որդւոց անտի ոչ գիտէր (Որոդ), թէ զո՞րն սահմանեսցէ յաթոռն առ ունելոյ զտեղի Բակրոյ (սպանելոյ ի պատերազմին ընդ Հռոմայեցւոց յԱսորիս, ինչպէս պիտի տեսնենք)։ Ի բազում հարճիցն, յորոց եղեն նորա այնչափ որդիք՝ իւրաքանչիւրն գուն գործէր տալ նախամեծար զիւր որդին առնել, և աշխատ առնէին զնա (կանայքն) ազգի ազգի հնարիւք նենգութեանց։ Այլ բախտն Պարթևաց, զորոց զգահն ունէին գրեթէ միշտ թագաւորք հայրասպանք՝ տայր զթագն չարագունին յորդւոց նորա։ (Հրահատ) այն ինչ անուանեալ թագաւոր, որպէս թէ կարի իմն յամէր հայրն ի մեռանել՝ սպանանէր զնա. ապա տայր խողխողել զեղբարսն ամենայն։ Յիւր որդիսն անգամ ոչ խնայէր. քանզի տեսեալ զաւագանի տէրութեանն

զայրացեալս ընդ այնչափ ոճիրս վնասուցն՝ սպան զմին յորդւոց իւ-
րոց, որ յարբունս հասեալ էր, զի մի՛ գացի ոք՝ զոր դիցեն փոխա-
նակ նորա։ Անտոնիոս ի պատուհասել զՊարթեւս, զի եղեն նոքա
զօրավիգն Կեսարու հակառակորդին նորա՝ խաղաց ի վերայ նոցա
վեշտասանիւք լընտիր ընտիր լեգէոնաց իւրոց, այլ չարաչար վկան-
դեալ ի բազում ճակատս՝ անճապարէր ելանել ի փախուստ։ Ամբար-
տաւանեալ Հրահատայ յաջողութեամբն՝ շաղախէր զանձն յայլ ևս
ոճիրս, և ելանէր վտարանդի յիւրոցն։ Բազում աղաչանօք ընդ եր-
կար թախանձեալ նախ զազգս արուարձանեայս և հուսկ ապա
զՍկիւթացիս՝ գտանէր թիկունս օգնականութեան ի նոցանէ, որ կա-
ցուցին զնա միւս անգամ յաթոռն։ Մինչ նա յաքսորս էր՝ Պարթեւք
ընտրէին թագաւոր զոմն Տրդատէս անուն, որոյ իմացեալ զմերձե-
նալ Սկիւթացւոցն՝ ապաւինէր բազում բարեկամօք առ կայսր (Օգոս-
տոս), որ յայնժամ էր ի մարտ պատերազմի յաշխարհին Սպանիա-
ցւոց. տայր նմա պատանդ յորդւոց անտի Հրահատայ զկրտսերագոյնն,
զոր արկեալ էր ի բուռն առ անհոգութեան պահապանացն։ Զայս
լուեալ Հրահատայ՝ առաքէր հրեշտակս առ կայսր, խնդրել զպա-
տանեակն և զՏրդատ տալ ի ձեռս իբրև զիւր ծառայ։ Լուեալ կայ-
սեր զարտունջ Հրահատայ և զաղաչանս ոստխին նորա (զի Տրդատ
ևս խնդրէր ունել զգահն՝ խոստացեալ հնազանդել զՊարթեւս իշխա-
նութեանն Հռոմոց, եթէ ի նոցա ձեռն հասանիցէ նմա առնուլ
զթագաւորութիւնն) չառնոյր յանձն ո՛չ զՏրդատ մատնել ի ձեռս
Պարթեւաց, և ոչ լինել սմա օգնական զօրու ընդդէմ Պարթեւաց։
Այլ զի մի՛ թուիցի թէ շնորհէ և ոչինչ՝ յանձնէր Հրահատայ զոր-
դին իւր, զՏրդատ հրաման տայր ունել մեծաւ պատուով շքեղու-
թեան՝ ցորչափ կամք իցեն նմա մնալ առ Հռոմայեցիս։ Յետ այնո-
րիկ իբրև ի գլուխ հանեալ զպատերազմն Սպանիացւոց գայր յԱսո-
րիս կարգել զիրս արևելից՝ երկուցեալ Հրահատայ, թէ գուցէ խա-
ղասցէ ի վերայ նորա կայսր՝ ժողովէր ի կողմանց կողմանց աշխար-
հին իւրոյ զգերիս զօրացն Կրասոսի և Անտոնեայ, և արձակէր զնո-
սա առ Օգոստոս հանդերձ արծուենշան դրօշիւքն, զոր հանեալ էր
ի լեգէոնաց։ Օգոստոս առնոյր ևս ի պատանդ զորդիս և զթոռունս
Հրահատայ, և վճարէր զօրութեամբ անուանն բազում ինչ՝ զոր
այլոյ զօրավարի չէ երբէք վճարեալ ի ձեռն զինուց» (Յուստ. ԽԲ.)։
Բայց քան զՅուստինոս վաւերականագոյն է յիշատակ այս դիպաց՝
կանգնելն Օգոստոսի ի պատիւ պատերազմի չաստուածոյն Արեայ մե-
հեան, ուր տուաւ կախել յետս առնուած դրօշներն ի Հրահատայ։
Կան արդարև Օգոստեայ դահեկանք, որոց ի մի կողման կայ գիր,
Signis receptis S. P. Q. R. Յոմանս պատկեր Արեսի վեցսիւնեայ

մեհեանին, ուր կը տեսնուի լեգէոնական դրօշն արծուենշան, 20 ամին։ Կան ուրիշ դահեկանք 18 ամին՝ գրով Civib. et sign. milit. a Part. recup., և պատկեր՝ յաղթական կամար և Օգոստոս չորեքձի կառօք կ'անցնի, երկու պարթև մարդոց մէջ նստած։ (Գաթրըճ. Տիեզ. Պատմ. Բ. 98)։ Այսպէս Հրահատ եկաց խաղաղութեամբ ընդ Հռոմայեցիս մինչև ի սպանումն իւր ի Թերմուսա կամ Մուսա անուն իտալացի հարճէն, զոր ղրկած էր Նմա Օգոստոս պարգև։ Հրահատ ունի դահեկան, որոյ ի մի կողման կայ Մուսայի պատկերն, և գիր՝ Μουσα (Գաթրըճ. անդ)։ Ցամէն՝ իբր 8 կայ Օգոստեայ դահեկան, ուր այր պարթև կը մատուցանէ կայսեր պատանիներ։ Նաև Օգոստոս ասէ ի կտակին. «Արքայ Պարթևաց Հրահատ Որոդայ որդի զորդիս իւր և զթոռունսն զամենեսին առաքեաց յԻտալիա, ոչ յաղթեալ ինչ պատերազմաւ, այլ զբարեկամութիւն այսօքիւք իւրոցն պատանդիւք խնդրեալ» (Գաթրըճ. Տիեզ. Պատմ. Բ. 99)։ Պարթևաց այս տկարութեան վկայ հաւատարիմ է Ստրաբոն ժամանակակից, որ ի խօսելն զմեծութենէն Հռոմայեցւոց՝ ի վերջ կոյս Զ. դրպրութեան, 4, 2, ասէ. «Պարթևք, որ են սահմանակից Հռոմոց՝ ունել ունին ահեղ զօրութիւն. բայց և սոքա խոնարհեցուցանեն այսօր զգլուխ, և են ընդ ազդեցութեամբ Հռոմոց և իշխանաց Նոցա։ Ոչ միայն առաքեցին յետս զնշանս յաղթութեանցն կանգնելոց սակաւ մի յառաջ ի Նախատինս Հռոմայ, այլ և Թագաւոր Նոցա Հրահատ կամեցաւ առնել յանձն ի խնամս Օգոստեայ զորդիս և զթոռունս իւր, պատանդք պատուականք սահմանեալք ի կորզել յանձն զմտերմութիւն բարեկամութեան Նորա։ Ի մեր իսկ աւուրս բազում անգամ Պարթևք եկուն անել ի Հռոմայ զիշխանն, զոր կամէին ունել ի գլուխ իւրեանց։ Համառօտ իսկ ասել՝ թուի իմն թէ ժամանակ է Նոցա և զանձինս և զինչս իւրեանց թողուլ կամաց և հաճութեան Հռոմոց»։

Ի յաջորդաց Հրահատայ Դ-ի չեղան երկայնակեաց ո՛չ Հրահատակ (Արշակ ԺԶ.) և ոչ յաջորդ Նորա Որոդ Բ. (իբր Արշակ ԺԷ.)։ Յետ Որոդայ Բ. կը խնդրեն Պարթևք ի Հռոմայ (10) զերիցագոյնն յորդւոց Հրահատայ զՎոնոն, իբրև Արշակ ԺԸ. (11—14)։ Այսմ վկայ է ոչ Տակիտոս միայն, այլ և կտակն Օգոստեայ (Տախտ. Զ.)։ «Ցինէն ազգք Պարթևաց խնդրեցին ի ձեռն իշխանաց ազգացն այնոցիկ, և զթագաւորս իւրեանց ընկալան, Պարթևք՝ զՎոնոն, զարքայի Հրահատայ զորդի, զարքայի Որոդայ զթոռն, Մարք՝...» են (Գաթրըճ. Տիեզ. Պատմ. Բ. 99)։ ԶՎոնոն, զոնեալն ի մէջ Հռոմայեցւոց, վասն կիրթ բարուցն և սովորութեանց՝ մերժեցին Պարթևք իբրև գերդ և օտարասէր, վասն զի չէր հեծներ ձի և ոչ կ'եր-

թար յորս, գեսպակաւ կը շրջէր և միշտ ընդ յոյնս էր կենակից։ Ուստի կոչեցին ի Դահաց զԱրտաւան ոմն, որ եկաւ բազմութեամբ մար-սկիւթացի զօրաց, և Վոնոն յետ միանգամ տալոյ ճակատ՝ յաղթուելով ապաստանեց անկաւ ի Հայս։ Ձայսմանէ աւելի մանր յետոյ։

4. Թագաւորութիւնն Արտաւանայ Գ. (այն է Արշակ ԺԹ, 14—44), է գլխաւոր կէտ ի պատմութեան ոչ Պարթևաց միայն, այլև Հայոց։ Ձամանէ, ինչպէս տեսանք՝ ասէ Տակիտոս, թէ էր սնեալ ի մէջ Դահաց, և Յովսեպոս՝ թէ էր ի Մարաց։ Դահօք կամ Մարօք պարտ է իմանալ սակայն այն հիւսիսային արևելեան թագաւորութիւնը, որ հաստատուեցաւ ի Բահլ (այն է Բակտրա, հին նուիրական քաղաք Արեաց յետ անկման յունական թագաւորութեան Բակտրիոյ), ուստի և կը կոչուի ի հին մատենագիրս մեր (Ագաթ. Խոր.) տէրութիւն Պահլաւաց, և կը տիրէր հիւսիսային արևելեան սկիւթացի ցեղերու, զորս մերքն (Ագաթ. և մանաւանդ Բուզ.) սովոր են կոչել Մազքութս կամ Քուշանս. յԵղիշէէ և Փարպեցւոյն կը կոչուին նոքա նաև Հեփթաղք և Հոնք, յարգի գիտնոց՝ Մար—Սկիւթացի։ Այս հիւսիսային արևելեան թագաւորութեան տիրող ցեղը, Պահլաւ կամ Պահլաւիկ՝ էր համազգի Պարթև Արշակունեաց, և ունէր ուրոյն դահեկանս, որ կան ցայժմ, ոչինչ աննման դահեկանաց Պարթևաց։ (Ձայսմանէ տես և յառաջնում մասին պատմութեան մերոյ, 227—230)։ Այսպէս Արտաւանաւ Գ, որ այն ցեղէն էր՝ փոխուեցաւ Պարթևաց տիրող ցեղն և անցաւ Պահլաւ տոհմին, յորում տևեց մինչև ի վերջին համանուն թագաւորն Պարթևաց Արտաւան Ե. (Արշակ ԼԱ, 216—226)։ «Արաբացի մատենագիրք, գրիչք պատմութեանն Պարթևաց, յԱրտաւանայ աստի նոր իմն հարստութիւն դնեն սկսանել, կոչելով զսա Աշկանեան, իսկ զառաջինն՝ Աշակեան» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 99. ծան. 3)։ Պահլաւ տոհմն կը համարուէր թէ կրօնիւք և թէ սովորութեամբ ազնուագոյն քան զՊարթև տոհմն, և կը կոչուէր ի նոցունց իսկ Սասանեանց թշնամեաց նորա՝ «Պատուական», «Պատուականագոյն», «Քաջատոհմիկ» (Խոր. Բ. ՀԲ, Գ. ԾԱ.), մինչ Պարթև տոհմն անարգուած էր իբրև ապականեալ արևմտեան բարուք և կրթութեամբ։ Արդարև Արտաւանաւ Գ. նոր զօրութիւն և մեծութիւն առաւ թագաւորութիւնն Պարթևաց։

Արտաւան տեսնելով, թէ մնաց թագաւորութիւնն յիւր ձեռս, բարձմամբ կամ խոյս տալով հակառակորդին (Վոնոնի)՝ ամբարտաւանեցաւ, և տեսեալ զՏիբեր ծերացեալ՝ խորհեցաւ առնուլ զՀայս ընդ իւրով իշխանութեամբ կամ ազդեցութեամբ։ Խաղաց գնաց դէպ

ի Կապադովկիա, պահանջելով Հռոմայեցիներէն հին Պարսից (Աքեմենեանց) երկիրներն յԱսիա։ Սակայն Պարթեւք, որ ձանձրացած էին յԱրտաւանայ՝ առաքեցին (35) պատգամաւորս ի Հռոմ խնդրել այլ թագաւոր։ Տիբեր հաճեցաւ խնդրոյն, և ղրկուեցաւ Հրահատայ Գ-ի որդին Հրահատ, որ պատանդ էր ի Հռոմ, բայց մինչև հասեալ ի Պարթեւս՝ մեռաւ յԱսորիս։ Յայնժամ Տիբեր ղրկեց ի թոռանց նորին Հրահատայ Գ-ի • զՏրդատ, զոր վանեց Հրահատ Դ. Սկիւթացւոց օգնութեամբ։ Տրդատ խոյս տուաւ յերեսաց Արտաւանայ, որ չյերկարեց ի կեանս, քանզի սպանուեցաւ դաւով յորդւոյն իւրմէ ի Գոտարզայ։ Վարդան, եղբայր Գոտարզայ, իբրև Արշակ Ի. (44—47) կը թագաւորէ քաջութեամբ, ապա անգութն Գոտարզ, (Արշակ ԻԱ, 47—50), ապա հօրեղբայր նորա Վոնոն Բ, որ կը թագաւորէր Մարաց՝ կը յաջորդէ իբրև Արշակ ԻԲ. կարճ ժամանակ († 50). յետ նորա որդին Վաղարշ Ա. (Արշակ ԻԳ, 50—90)։ Յովսեպոս չգիտեր զՎոնոն, այլ Գոտարզայ, զոր կը դնէ սպանուած դաւով՝ կը պատմէ յաջորդեալ զՎաղարշ, զորմէ ասէ թէ էր եղբայր Գոտարզայ։ «Պարթեւք սպանին զՎարդան և եդին փոխանակ նորա զեղբայր նորա զԳոտարզ, որ նոյնպէս յետ սակաւուց սպանաւ դաւով, և Վաղարշ եղբայր Գոտարզայ պայազատէ զնա» (Յովս. Նախն. պատմ. Ի. Բ.)։ Վաղարշ, որ յետ Արտաւանայ երևելին է ի թագաւորս Պարթևաց Պահլաւ ցեղէ՝ խորհեցաւ ի գլուխ հանել Արտաւանայ խորհուրդը, դնել Պահլաւ ցեղէ թագաւոր Հայոց վրայ, և այս պատճառաւ ունեցաւ երկայն և արիւնահեղ պատերազմ ընդ Հռոմայեցիս։

Տակիտոս կը պատմէ երկար զգործս Պարթև թագաւորաց ի Հրահատայ Դ-է մինչև Վաղարշ Ա. յիշելով մանր բազում ինչ որ կը վերաբերի մեզ։ Մենք այն երկար պատմութենէն պիտի առնունք յետոյ մեր մասը միայն։ Վաղարշ, յետ տեսանելոյ զեղբայր իւր զՏրդատ հաստատեալ ի վերայ գահուն Արշակունեաց ի Հայս (65)՝ մեռաւ, և յաջորդեց նմա Բակուր Ա. (Արշակ ԻԴ, 90—108), որ գեղեցկացուց զՏիզբոն, ապա Խոսրով Ա. (իբր Արշակ ԻԵ, 108—121), առ որով նորոգեցաւ պատերազմն ընդ Հռոմայեցիս, դարձեալ վասն Հայոց։ Յարշաւանս Տրայիանոսի, որ շատ երկիրներ, ինչպէս զՀայս, զԱսորեստան և զՄիջագետս նուաճելով արար նահանգ՝ Խոսրով խոյս կուտայ ի վերին գաւառս, և ապա դառնալով կ'առնու վերստին իշխանութիւնը (121)։ Խոսրովու յաջորդեց Վաղարշ Բ. իբր Արշակ ԻԶ. (121—150), առ Ադրիանոսիւ և Անտոնինոսիւ։ Ադրիանոս դարձուց նուաճեալ գաւառներն, Հայաստան, Ասորեստան և զՄիջագետս, և Եփրատ եղաւ դարձեալ սահման երկուց

թագաւորութեանց։ Պարթեւք այնչափ պէտս ունէին խաղաղութեան՝ որչափ Հռոմայեցի կայսերք։ Բայց խաղաղութիւնը չտեւեց երկար։ Առ Վաղարշաւ Գ. (Արշակ ԻԷ, 151—192), պատերազմը նորոգուեցաւ ի մէջ Պարթեւաց և Հռոմոց, դարձեալ Հայաստանի համար։ Ղուկիոս Վերիոս եկաւ արեւելք, յունական քաղաքն Սելեւկիա, որ ի սկզբանէ անտի տէրութեանն Պարթեւաց եղած էր ինքնօրէն աղիկամի, և Տիզբոն՝ առնուեցան անհնարին աւերմամբ և կոտորածով։ Սելեւկիա չկարաց կանգնել միւս անգամ, Տիզբոն միայն նորոգուեցաւ։ Արտաւան Դ. (Արշակ ԻԸ, 192—199), իրեն դէմ գրգռեց զՍեպտիմոս Սեւերոս, վասն զի Արտաւան Սեւերոսի քաղաքական պատերազմին ժամանակ ընդդէմ Նիգերի՝ թեր եղած էր այս վերջնոյն։ Տիզբոն երկրորդ անգամ առնուեցաւ պաշարմամբ. Արտաւան որ կը պաշտպանէր քաղաքը՝ հազիւ պրծաւ, և Հռոմայեցիք առին 100,000 գերի և մեծագին աւար (197)։ Բակուր Բ. եւս (Արշակ ԻԹ, 199—209) յաղթուեցաւ նոյն Սեւերոսէ, բայց Հռոմայեցիք ոչինչ շահեցան այս յարձակումներէն։ Սակայն Կարակալլա առաւ զՈւռհայաստան (զՄծբին), և Պարթեւաց տէրութիւնն սկսաւ երթալ ի կործանումն։ Ստէպ յեղափոխութիւնք, որ կը ծագէին թէ առ յեղյեղուկ բնութեան ազգին և թէ յոռի վարչութենէ՝ սպառած էին երկրին ոյժը։ Ի թագաւորութեանն Վաղարշու Դ. (Արշակ Լ, 209—216), և Արտաւանայ Ե, (Արշակ ԼԱ, 216—226)՝ խռովութիւնք սկսան յաճախել թագաւորական ընտանեաց մէջ։ Կարակալլա խնդրեց Արտաւանայ դուստրն ի կնութիւն, որպէս զի, եթէ զլանար Արտաւան՝ կայսրը պատճառ ունենար պատերազմի։ Ըստ ոմանց՝ Արտաւան մերժեց խնդիրը, և Կարակալլա խաղաց իսկոյն Միջագետաց վրայ. ըստ այլոց՝ Արտաւան անձամբ բերաւ աղջիկը, և Կարակալլա սոսկալի նենգութեամբ տուաւ կոտորել հարսնեւորներն, և Արտաւան հազիւ զերծաւ (216)։ Մակրինոս կռեց դաշինս խաղաղութեան Պարթեւաց հետ, բայց յետ ամաց ինչ ծագեցաւ յեղափոխութիւնն, որ կործանեց զպետութիւնն Պարթեւական (Պահլաւ), և կանգնեց զՊարսիցն (Սասանական) (226)։



# ԳԼՈՒԽ Է.

## ՍԱՍԱՆԵԱՆՔ։

*1. Պատճառք անկման Պարթեւաց: 2. Սասանեան թագաւորք: 3. Արտաշիր. Կրօնական նորոգումն: 4. Համառօտ պատմութիւն Սասանեանց:*

**1.** Բարեպաշտագոյն Պահլաւ ցեղն, որ Արտաւանաւ Գ. առած էր Պարթեւական թագաւորութիւնը՝ չեղաւ բաւական գոհացունել արիական ցեղերուն մոլեռանդութիւնն, որ Յունաց հետ որեւիցէ մերձաւորութիւն կը համարէր անկրօնութիւն։ Այս, ինչպէս նաեւ թագաւորական ընտանեաց մէջ ստէպ գժտութիւնք եւ կռիւք՝ քաջալերեցին զԱրտաշիր ոմն պարսիկ՝ յարուցանել Արտաւանայ Դ-ի տասներորդ տարին այն մեծ ապստամբութիւնն, որ կործանելով Պահլաւ տոհմը՝ Սասանեան ցեղին տուաւ Պարթեւական տէրութիւնը, որ այնուհետեւ կոչուեցաւ Սասանեան։ Արտաշրի ծագման վրայ առ Խորենացւով կային այլեւայլ միմեանց հակառակ զրոյցք, նա մանաւանդ առասպելք, յորոց ինչ ինչ կը համառօտէ Խորենացին, խոստովանելով թէ են բարբաջմունք. «Անտեղի է մեզ երկրորդել զառասպելսն յաղագս երազոյն Փափաքոյ, եւ արտադատութեան հրոյն մանուածոյ որ ի Սասանայ, եւ պատումն զհօտին, եւ լուսնակն, եւ ախտարմողացն յառաջասացումն որ են քաւդեայք, եւ որ ինչ զկնի այսորիկ. եւ պոռնկական խորհուրդն Արտաշրի հանդերձ սպանութեամբք, եւ անմիտ հանճարաբանութիւն մոգին դըստեր վասն նոխազին, եւ որ ինչ այլն ամենայն։ Նաեւ այծին դիեցումն մանկանն ընդ հովանեաւ արծուոյն, եւ գուշակումն ագռաւուն, եւ դերապանծին պահպանութիւն առիւծուն հանդերձ արբանեկութեամբ գայլուն, եւ մենամարտութեանն առաքինութիւն, եւ որ ինչ այլաբանութեանն բերէ կարգ» (Խոր. Բ. Հ.)։ Այս մութ ակնարկութեններ, զոր կը թուի թէ առած է Խորենացին իւր Խոռոհբուտէն՝ սաչափ միայն կը գտնենք, թէ ըստ աւանդութեան պարսիկ մատենագրաց ոմանց՝ Արտաշիր զոր եւ Արտաշէս կ'անուանեն՝ էր որդի ուրումն Սասանայ եւ կնոջ Բաբեկ (Փափաք) անուն իշխանի,

որ ստիպած էր զկինն լինել անձնատուր Սասանայ, վասն զի տեսած էր երազ, թէ այն խառնակ միութենէն պիտի ծնանէր նշանաւոր ոք, որպիսի եղաւ Արտաշիր յաղթութեամբքն ի վերայ Արտաւանայ։ Այլք կը պատմէին այլ ազգ. որպէս թէ Սասան էր հովիւ ուրումն Փափաքայ, զորոյ զդուստրն արար կին. ի մերձենալ Սասանայ առ կինն՝ եղաւ հուր ի Սասանայ և պատեց զհօտն և ծագեց լուսին. զայսմանէ քաղդեայք գուշակութիւններ ըրին մանկան վրայ, որ պիտի ծնանէր։ Դարձեալ ըստ այլոց՝ Սասան էր որդի Բուհանան անուն ուրումն թագաւորի, որոյ կինն էր քոյր Սասանայ, և մերժուելով ի սմանէ վասն անարժան խառնակութեան՝ կը փախչի ի Հնդիկս հանդերձ մանկամբն։ Թէ ինչ է «անմիտ հանճարաբանութիւն մոգին դստեր վասն նոխազին»՝ չէ յայտ. կը պատմուէր սակայն, թէ զԱրտաշիր մանուկ կը սնուցանէ այծ, արծուին լինի հովանի, և առիւծ հանդերձ գայլու կը սպասաւորէ մանկանն, որ վարժեալ ի մենամարտութիւն՝ կը դառնայ ի հայրենիս։

Առասպելական պատմութիւն է նաև այն, զոր կը կարդանք ի յունարէն օրինակին Ագաթանգեղոսի։ Ըստ այսմ՝ Արտաւան էր աստեղագէտ և կը պարապէր ի քննութիւն աստեղաց, և հայելով ի նոսա կը հմայէր, կը գուշակէր հանդերձեալը, մանաւանդ ինչ որ պիտի պատահէր իւր թագաւորութեան։ Օր մի, մինչ նստած էր Արտաւան յառագաստին ընդ կնոջ իւրում՝ նայելով յաստեղս սկսաւ հմայել։ «Կը տեսնեմ, ասէ ցկինն, յընթացս աստեղաց, զի եթէ ոք արդ ապստամբէ իւր թագաւորէն՝ պիտի յաջողի. ուստի կասկած ունիմ թագաւորութեանս համար». զայս ասելով եմուտ ի քուն։ Նաժիշտ տիկնոջն, Արտադուխտ անուն, որ էր ի սենեկին՝ լսելով զայս—քանզի ծանօթ էր Արտաշրի—գնաց պատմել նմա թագաւորին գուշակութիւնը, և առնլով ի նմանէ խոստումն երդմամբ, որ եթէ հասնէր թագաւորութեան ընէր զնա տիկնաց տիկին՝ յորդորեց զնա կատարել զգործ ապստամբութեանն, զոր գիտէր թէ կը խորհէր Արտաշիր։ Հաւանականագոյնն սակայն այս է.—Պարս կոչուած գաւառն, որ էր արիական գաւառներուն հարաւայիններէն, յարևելից Տիգրիսի՝ կը թուի կառավարեալ ի սկզբանէ հետէ առանձին իշխանօք։ Այս իշխաններէն էր Արտաշիր որդի Սասանայ (226—240)։ Արտաւան կը ջանայ նուաճել ապստամբութիւնը, բայց յաղթուելով ապստամբ մասէն՝ կը սպանուի։

**2.** Սասանեան թագաւորք որ տիրեցին յԱրտաշրէ (226) և այսր՝ են —

1. Արտաշիր (226—240)։
2. Շապուհ Ա. որդի նորա (240—271)։

3. *Որմիզդ կամ Որմզդատ* Ա. (271—272)։
4. *Վռամ* Ա. (272—275)։
5. *Վռամ* Բ. (275—292)։
6. *Վռամ* Գ. (292 *ամիսս ինչ*)։
7. *Ներսեհ* (292—302)։
8. *Որմիզդ կամ Որմզդատ* Բ. (302—309)։
9. *Շապուհ* Բ. (309—381)։
10. *Արտաշիր* Բ. (381—385)։
11. *Շապուհ* Գ. (385—389)։
12. *Վռամ* Դ, *Կրման* (389—400)։
13. *Յազկերտ* Ա. (400—421)։
14. *Վռամ* Ե. (421—442)։
15. *Յազկերտ* Բ. (439—458, *կամ* 442—460)։
16. *Պերոզ* (460—483)։
17. *Վաղարշ* (483—487, *կամ*—491)։

(*Մինչև Վաղարշ կը հասնի մեր պատմութեան այս մասը*)։

**Յ.** *Գլխաւոր գործ Արտաշրի եղած կը թուի անել հին զրադաշտական կրօնքն յիւր նախկին մաքրութիւն։ Իբր ութսուն հազար մոգ ժողովելով՝ որոշեց մոգապաշտութեան վարդապետութիւնը և պաշտօնը։ Այսպէս յունական կռապաշտութեան և բազմաթիւ աղանդներու առաջն առնուեցաւ։ Բոլոր աղանդներէն կը թուի թէ հինգ միայն ընդունուեցան, զորոց անունները կուտայ Եղիշէ, այն է Համակդենն, Ամպարտքաշն, Բոզպայիտն, Պահլաւիկն և Պարսկադենն, իբրև ընկալեալ աղանդք մոգութեան։ Արտաքոյ սոցա կար միւս ևս աղանդ, որ ըստ նոյն Եղիշէի կը կոչուէր Մոգպետի։ «Այս հինգ կեշտք են, որ գրաւեալ ունին զամենայն օրէնս մոգութեան. բայց արտաքոյ սոցա է միւս ևս այլ վեցերորդ, զոր մոգպետն կոչեն» (Եղիշ Ը. 253)։ Մեծ պատիւ կը վայելէր բոլոր այս աղանդոց գլխաւորն, որ կը կոչուէր «իշխան դենպետ», որպիսի էր մոգպետն՝ որում յանձնուեցան Ղևոնդեանք և որ, ըստ պատմութեան Եղիշէի, տեսնելով զՂևոնդեանս բանտին մէջ համակ լուսեղէն՝ հաւատաց և մկրտուեցաւ. պատմութիւն՝ զոր կը ստեղծէ Եղիշէ Գործոց առաքելոց բանտապետին պատմութեան նմանութեամբ։*

*Արտաշիր նուաճելով նաև ապստամբութիւններն և անկախ իշխանութիւններն, որ եղած էին Պարթև թագաւորաց տկարութենէն՝ բերաւ երկիրն ի միութիւն և զօրացուց թագաւորական իշխանութիւնը։ Այսպէս կանգնեցաւ նոր պարսկական պետութիւնն իբրև ստուածպետական խալիֆայութիւն, աշխարհական և եկեղեցական միանգամայն։ Յետ այսր ամենայնի Արտաշիր կամեցաւ նաև յաղ-*

թուլթիւններով փառաւոր երևցուննել զտէրութիւն իւր, բայց գտաւ ինքեան ահաւոր թշնամի զՀռոմայեցիս։ Պատրաստելով 120 հազար զօրք, 1800 գերանդաւոր կառք և 70 փիղ՝ պահանջեց Հռոմայեցիներէն հին Պարսից բոլոր երկիրներն առ Կիւրոսիւ, որոյ յաջորդ և զաւակ կ'անուանէր զանձն. բայց կրեց սաստիկ ընդդիմութիւն Աղեքսանդր Սևերոս կայսերէ։ Թէպէտ Սևերոս չկարաց տանել կատարեալ յաղթութիւն ի գլուխ՝ բայց Արտաշիր ևս չեղաւ ձեռնհաս հանել զՀռոմայեցիս յԱսիոյ, և ոչ զՄիջագետս կարաց կորզել ի Հռոմայեցւոց։ Բայց և այնպէս Արտաշրի թագաւորութեան ժամանակն, որ տևեց 14 տարի՝ մարթի համարուիլ նոր դարագլուխ ի պատմութեան Արևելից։

**4.** Արտաշրի յաջորդեց որդին Շապուհ Ա. (240—271), առ որով եղան ձախող պատերազմունք ի մէջ երկու մեծ տէրութեանց, բայց ի վախճանի Հայաստան և Միջագետք հնազանդեցան Սասանեանց։ Արդարև Վաղերիանոս խաղաց անձամբ Միջագետաց վրայ, բայց յաղթուելով (260) բռնուեցաւ։ Ազնուամիտ կայսրն առ վշտին մեռաւ թշնամանօք ի գերութեան, և մորթն հանուելով՝ խոտով լցուած կախուեցաւ հրապարակաւ։ Պարսիկք առնլով զԱսորիս և զԿիլիկիա՝ եկան մինչև ի Կեսարիա Կապադովկացւոց, մինչ յանկարծ քաջն Ոդոնատ, իշխան Պալմիրայ, վանեց զնոսա անդր քան զԵփրատ։ Պալմիրա եղաւ սակայն ուրոյն տէրութիւն ազատ ի Հռոմայեցւոց, և յաջորդն Ոդոնատայ Զենոբիա զարհուրեցուց զՇապուհ, մինչև խնդրել սմա թագուհւոյն դաշնակցութիւնը։ Շապուհ մեռաւ, մինչ Զենոբիա կը կռուէր ընդ Աւրեղիանու։

Շապհոյ Ա-ոյ յաջորդեցին Որմիզդ Ա. (271—272), Վռամ Ա. (272—275)։ Այս երկու թագաւորք չէին պատերազմասէրք։ Առ սոքօք Կարոս տիրեց Միջագետաց, առաւ զՍելևկիա և զՏիզբոն, անցաւ զՏիգրիս։ Կայսեր մահը միայն ազատեց Սասանեանց տէրութիւնն ի մեծ վտանգէն։

Հանդարտութեամբ անցաւ Վռամայ Բ-ի (275—292), և Վռամայ Գ-ի (292) թագաւորութիւնը։ Հռոմայեցւոց հետ պատերազմն սկսաւ առ Ներսեհիւ (292—302), որ նուաճեց միւս անգամ զՀայս ապստամբեալս, և խորհեցաւ հանել զՀռոմայեցիս յԱսիոյ. բայց յաղթուեցաւ չարաչար ի Գաղերիոսէ, որ էր յայնժամ զօրավար Դիոկղետիանոսի։ Դիոկղետիանոս դրաւ սահման երկու տէրութեանց մէջ՝ զԽովբար կամ Քաբուր գետ. Միջագետք տրուեցան Հռոմայեցւոց, և կռեցան դաշինք խաղաղութեան, որ տևեց իբր 40 տարի։

Ներսեհի յաջորդեց Որմիզդ Բ. (302—309), ապա որդին Շապուհ Բ. երկայնակեաց (309—381)։ Շապուհ ոչ միայն վանեց զԱ-

րաբացիս, որ մինչև Տիգրոն եկած էին, այլև փորձեց առնուլ Հռոմայեցիներէն երկիրներն յայսկոյս Տիգրիսի, բայց կասեցաւ՝ ակնածելով ի հզօրութենէն Կոստանդիանոսի մեծի, առ որով տևեց արդարև խաղաղութիւնն, որ եղաւ առ Ներսեհիւ։ Յետ մահուն Կոստանդիանոսի՝ Շապուհ սկսաւ պատերազմն ընդ Հռոմայեցիս։ Երիցս պաշարեցաւ երեքպարսպեանն Մծբին, որ կը նկատուէր իբր պատուար ընդդէմ արևելից, առնուեցաւ Ամիդ մեծ կորստեամբ ի Պարսից։ Շապուհ, թէպէտ յաղթող՝ տեսաւ թէ դժուարին էր նմա կատարել զԱսիա նուաճելու խորհուրդը, և կրեց սաստիկ յարձակումն Յուլիանոսէ, որ մեծամեծ յաղթութեամբք մտաւ Պարսկաստանի սիրտը, բայց յանդգնութեամբն յաղթուելով սպանուեցաւ (369), և Հռոմայեցիք վանեցան ի սպառ։ Յաջորդն Յուլիանու Յովիանոս ստիպուեցաւ դաշամբ (որոյ պայմաններէն մին էր ձեռնթափ լինել ի Հայոց) հրաժարել ի Միջագետաց։ Մծբին և ուրիշ քաղաքներ և ամրոցներ ի Միջագետս՝ անցան Պարսից։ Յետ այս ամենայն փառաւոր յաջողուածոց՝ մեռաւ Շապուհ, և յաջորդեցին նմա

Արտաշիր Բ. (381—385), Շապուհ Գ. (385—389), Վռամ Դ. (389—400), Յազկերտ Ա. (400—421)։ Այս թագաւորաց ժամանակ Սասանեանք ներքին յուզմամբք և Կրմանից դէմ կռիւներով էին զբաղեալ։ Յազկերտի Ա-ի հետ բարեկամութեամբ էր Արկադէոս, որդին Թէոդոսի մեծի, մինչև նմա յանձնել զիւր որդին Թէոդոս (408)։ Ի շնորհս Հռոմայեցւոց՝ ազատութիւն մեծ կը վայելէին քրիստոնեայք ի Պարսս. բայց Յազկերտի վերջին տարիներն անմիտ նախանձ եպիսկոպոսի մը, որ կործանեց ատրուշան մի ի Շօշ՝ տուաւ պատճառ հալածման ընդդէմ քրիստոնէից, մինչև Վռամայ Ե. (421—442) պահանջել Հռոմայեցւոց երկիրն ապաւինող քրիստոնեաներ։ Հռոմայեցիք չառին յանձն տալ, և ծագեցաւ պատերազմ։ Վռամ խաղաց յարևմուտս, մինչև ստիպիլ կայսեր՝ տալով հարկ Ասիոյ բաժնին համար՝ հեռացունել զՎռամ։ Առ Յազկերտիւ Բ, յաջորդաւ Վռամայ (440—457)՝ Հռոմայեցիք դադրեցուցին հարկը։ Յազկերտ չէր բարեկամ քրիստոնէից։ Նմա յաջորդեցին երկու որդիք նորա Պերոզ և Որմիզդ. բայց Պերոզ օգնութեամբ Հեփթաղաց սպանեց զեղբայր իւր (460) և տիրեց միահեծան (460—483)։ Առ սովաւ եղաւ երաշտութիւն մեծ, ըստ արևելեան աւանդութեան եօթը տարի։ Պերոզ հակառակ իւր դաշանց խաղալով Հեփթաղաց վրայ՝ կ'սպանուի, և կը յաջորդէ Վաղարշ (483—491), առ որով կը վերջանայ մեր Պատմութեան այս երկրորդ մասը։



# ԳԼՈՒԽ Ը.

## ՀԱՅ ԱՐՇԱԿՈՒՆԻՔ։

*1. Երկրորդ հարստութիւն Հայոց. Հռոմայեցիք: 2. Հռոմայեցւոց մուտն ի Փոքրն Ասիա. Ցայնժամու վիճակ այն երկրին: 3. Դաշնակցութիւն ի մէջ թագաւորութեանց Փոքուն Ասիոյ. Հայք. Արտաքսիաս:*

**1.** Երկրորդ հարստութիւն մեր, զոր սովոր եմք կոչել Արշակունեաց՝ կ'սկսի և կը զօրանայ Հռոմայեցւոց ազդեցութեան սկսելովն և զօրանալով յարևելս, ինչպէս այն ազդեցութեան տկարանալովն և դադարելով՝ կը տկարանայ և կը դադարի։ Հռոմայեցւոց ազդեցութեան Ասիոյ մէջ սկսելուն թուականն է՝ Սելևկեան թագաւորներէն Անտիոքոսի մեծի (222—186) պարտութեան տարին, որ է 190 նախ քան զՔր.։ Անտիոքոս մեծ, Սելևկեանց վեցերորդն, յետ յաղթելոյ ոսոխաց իւրոց Պտղոմեանց (203—198) և նուաճելոյ Փոքուն Ասիոյ յունական քաղաքներն, մինչ կը խորհէր անցնել ի Յոյնս՝ յարոյց ընդդէմ իւր զՀռոմայեցիս, որ ակն դրած էին Յունաստանի և Փոքուն Ասիոյ։ Ի զուր Հռոմայեցի պատգամաւորք եկան յԵփեսոս առ թագաւորն՝ հաւանեցուցանել զնա ազատ թողուլ նուաճեալ քաղաքներն և ի բաց կալ Յունաստան գրաւելու խորհրդէն։ Խրոխտ Անտիոքոս պատասխանեց խստիւ, և սկսաւ պատերազմն ընդ Հռոմայեցիս։ Անտիոքոս յաղթուեցաւ առ Սաղամինեաւ (191), յաջորդ ամին՝ առ Մագնեսեաւ, և ծանր պայմաններով հազիւ կարաց գնել հաշտութիւնը։

**2.** Երբ Հռոմայեցիք յետ պարտութեանն Անտիոքոսի դրին ոտն ի Փոքրն Ասիա՝ երկրիս այն մասին մէջ,—թող երեք յոյն գաղթականութիւններն առ Եգէական ծովուն, Դորիա, Յոնիա, Եւողիա, հանդերձ անուանի յունական քաղաքօք, որոց երևելիքն էին Եփեսոս, Զմիւռնիա և այլք՝—կային մանր մանր թագաւորութիւնք, յորոց միջի նշանաւոր կը համարուին Պերգամոն, Բիւթանիա, Գաղատիա, Կապադովկիա և Պոնտոս։

Պերգամոնի թագաւորութիւնն սկսաւ 283-ին նախ քան զՔր.

և 129-ին անցաւ Հռոմայեցւոց՝ մահուամբ վերջին թագաւորին Պերգամոնի, Արիստոնիկեայ, որ իբրև ապստամբ սպանաւ ի Հռոմ։

Բիւթանիոյ թագաւորութիւնն կար յԸ. դարուն նախ քան զՔր. թրակացի ժողովուրդներէ։ Առ Աղեքսանդրիւ նուաճեցաւ, բայց յետ սակաւուց առաւ զիւր անկախութիւնն մինչև 75 նախ քան զՔր., երբ թագաւոր երկրին Նիկոմեդ Գ. թողուց կտակաւ Հռոմայեցւոց զտէրութիւնն։

Գաղատացի հրոսակներ 278-ին ն. ք. զՔր. հրաւիրուելով Բիւթանիոյ թագաւորէն՝ հաստատուեցան յետ բազում աւարառութեանց գրեթէ ի միջոցին Փոքուն Ասիոյ առ Ալիւս գետով, և երկիրը կոչուեցաւ յանուն նոցա Գաղատիա։ Հռոմայեցի հիւպատոսն Մանլիոս Վուլսոն նուաճեց (189) այս աւազակաբարոյ ժողովուրդն, որ այնուհետև առ սակաւ սակաւ ընդելացաւ յունական քաղաքակրթութեան, և մտնելով ընդ պաշտպանութեամբ Հռոմայեցւոց՝ տևեց ո՛չ իբրև թագաւորութիւն, այլ իբրև ինքնօրէն գաւառ։ Առ Օգոստոսիւ Գաղատիա եղաւ նահանգ հռոմէական։

Կապադովկիա կար յԵ. դարուն նախ քան զՔրիստոս։ Նուաճեցաւ առ Կիւրոսիւ, որ բաժնեց զայն երկու սատրապութիւն, Պոնտոս և բուն Կապադովկիա անուամբ։ Ըստ Պոլիբեայ՝ Կապադովկիոյ թագաւորք էին յիշխանաց Պարսից։ Աղեքսանդր թողուց զԿապադովկիա ինքնօրէն. Սելևկեանք յանձնեցին զերկիրն կուսակալաց, որ յետոյ եղան ինքնիշխան դէպ յամն 312։ Արիարաթ Ե. (220—166) ի թագաւորս Փոքուն Ասիոյ եղաւ առաջին, որ բարեկամացաւ Հռոմայեցւոց յետ պարտութեանն Անտիոքոսի առ Մագնեսեաւ, պարտութիւն որ զՓոքրն Ասիա արկ ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց։ Կապադովկիա եղաւ նահանգ առ Տիբերիւ, 18 յետ Քսի։

Պոնտոսի թագաւորութիւնն սկսաւ Դ. դարուն նախ քան զՔր.։ Առաջին թագաւոր երկրին եղաւ մին յիշխանաց Պարսից։ Թագաւորք Պոնտոսի կը կոչուէին ընդհանրապէս Միհրդատ, ինչպէս Կապադովկիային՝ Արիարաթ։ Պոնտոսի վերջին թագաւորն եղաւ Միհրդատ Ը. Եւպատոր (123—63), կոչեցեալն Մեծ, որոյ մահուամբ (63) երկիրն եղաւ նահանգ Հռոմայեցւոց։

**3.** Այս թագաւորութիւնք Փոքուն Ասիոյ, որոց գրեթէ ամէնքը տևեցին մինչև ի կէսն Ա. դարու նախ քան զՔր.՝ անկան ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց, որպէս ասացաւ, յամէն 190, յետ ճակատուն առ Մագնեսեաւ. էին լի նախանձու իրարու դէմ և ատելութեամբ առ Հռոմայեցիս. բայց այս վերջիններուն ահը չէր թողուր և ոչ միումն՝ մեծանալ վնասու միւսոյն։ Իբրև վեց տարի յետոյ քան զտիրելն հռոմէական ազդեցութեան ի Փոքրն Ասիա՝ Փառ-

նակ արքայ Պոնտոսի յարձակեցաւ ի վերայ Եւմենեայ արքայի Պերգամոնի, բայց ազդեցութեամբ Հռոմայեցւոց ոչ միայն դարձաւ յետս հանդերձ տուգանօք պատերազմին, այլև կազմուեցաւ ի մէջ թագաւորութեանց Փոքուն Ասիոյ (180) դաշնակցութիւն մի, որոյ մասնակից էր, ըստ Պողիբեայ ժամանակակից պատմագրի՝ նաև վերին Հայոց թագաւորն Արտաքսիաս, ինչպէս տեսանք Մասն Ա. էջ 82, 83 և 236։

Հոն տեսանք նաև ի Ստրաբոնէ, որ գրեթէ ժամանակակից է, թէ ինչպէս Արտաքսիաս և Զարիադրէս, մին Մեծին Հայոց հիւսիսային արևելեան մասին (Երասխայ), և միւսն հարաւային արևմըտեան մասին (Ծոփաց) կուսակալ ի կողմանէ Սելևկեանց՝ յետ պարտութեան տեառն իւրեանց Անտիոքոսի մեծի՝ կապեցին թագ և նուաճելով դրացի ազգերէ գաւառներ՝ ընդարձակեցին զտէրութիւն իւրեանց։



# ԳԼՈՒԽ Թ.

## ԱՐՏԱՔՍԻԱՍԱՅ ՑԵՂՆ 190-ԷՆ ՆԱԽ ՔԱՆ ԶՔՐ. ՄԻՆՉԵՒ Ի ՍԿԻԶԲՆ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՈՑ։

*1. Տիգրան մեծ։ 2. Ստրաբոն, Պոմպէոս Տրոգոս զՏիգրանայ։ 3. Գլխաւոր գործ Տիգրանայ։ 4. Թագաւորք Պոնտոսի։ 5. Միհրդատ. պատերազմունք նորա ընդդէմ Հռոմայեցւոց. Ստրաբոն, Ցուստինոս, Եննիոս Փլորոս։ 6. Դաշնակցութիւն Տիգրանայ ընդ Միհրդատայ. Ղուկուղղոս։ 7. Վկայութիւն Կիկերոնի։ 8. Տիգրան նուաճի. Հայք բարեկամ Հռոմայեցւոց։ 9. Աղերս Հայոց ընդ Պարթեւաց։ 10. Դիոն Կասսիոս զՏիգրանայ եւ զորդւոյն։ 11. Բարք Տիգրանայ։ 12. Թէոդոր Ռէյնաք զՀայոց։ 13. Աւանդութիւն մի ի հանդէս դաշնակցութեանն Տիգրանայ ընդ Միհրդատայ։ 14. Հնագոյն դիք Հայոց։ 15. Դիցապաշտութիւնն Հայոց եւ Կապադովկացւոց։ 16. Կրօնական աղերս ընդ Կապադովկացւոց։ 17. Մաժաք ըստ Ստրաբոնի։ 18. Փոքր Հայք։ 19. Պոնտոս։*

**1.** Պոլիբիոս չյիշեր զյաջորդս Արտաքսիասայ, և ոչ Ստրաբոն կը յիշէ Արտաքսիասայ անմիջական յաջորդներն, այլ միայն, իբրև ի նորա զաւակէն կամ յաջորդներէն՝ զՏիգրան մեծ և զԱրտաւազդ։ «Տիգրանէս ի զաւակէ Արտաքսիասայ, առ զմասն երկրին (Հայոց) որ ձգի առ Մարօք, Աղուանիւք և Վրօք մինչև ի Կողքիս և ի Ծովեզերեայն Կապադովկիա»։ Եւ սակաւ մի յետոյ.—«Յաջորդն Տիգրանայ Արտաւազդ լինէր յաջող և բարենշան, ցորչափ եկաց ի բարեկամութեան Հռոմոց»։ Ստրաբոն ասելով զՏիգրանայ, թէ էր ի զաւակէն Արտաքսիասայ, և ոչ յաջորդ նորա՝ կուտայ իմանալ, թէ ի մէջ այս երկուց կային այլ թագաւորք։ Այլ զոցանէ չունիմք ստոյգ տեղեկութիւն ժամանակակից աղբիւրներէ, այլ խառն ի խուռն ինչ և կարկատուն։ Տրոգոս Պոմպէոս միայն, մատենագիր Ա. դարու առ Յուստինոսի՝ կը յիշէ զԱրտաւազդ ոմն թագաւոր Հայոց ի պատերազմի ընդ Միհրդատայ Բ-ի (100—86), ինչպէս յետոյ տեսնենք ի ստորև։ Ուստի և մեք թողեալ զսոսա, իբրև մեր պատմութեան անստոյգ ժամանակին վերաբերեալ, և բաւական համարելով ինչ որ ասացաւ զսկզբնաւորութենէ երկրորդ հարստութեանն Հայոց Ար-

*տաքսիասաւ յառաջնում մասին Պատմութեան մերոյ, էջ 235—241՝ կ'սկսինք մեր պատմական ժամանակն ի Տիգրանայ մեծէ, որ կը թուի թագաւորեալ 90-ին կամ ամօք ինչ յառաջ նախ քան զՔրիստոս։*

*Տիգրանայ թագաւորելուն թուականն անտի յայտնի է, որ 70-ին նախ քան զՔր․, երբ Ղուկուղղոսի դեսպանն Ապպիոս Կղաւդիոս եկաւ՝ Տիգրան էր թագաւոր ի 25 ամաց հետէ. ապա թագաւորած էր նա 95-ին (Պլուտ․ Ղուկուղ․ 21)։ Իսկ մահ նորա դիպեցաւ ի փետրուարի 54-ին (ըստ Կիկ․ վասն Սեստ․ Գ․ 59), կամ 56-ին (ըստ Պլուտ․ Կրաս․ 49), և ի մեռանելն էր 85 ամեայ։*

*Տիգրանայ ներքին գործոց վրայ ի Հայս իւր թագաւորութեան գրեթէ քառասնամեայ ժամանակին մէջ՝ չունիմք ստոյգ տեղեկութիւն առ ի չգոյէ տոհմային ժամանակակից պատմութեան։ Ստոյգ է միայն լինելն նորա Հայոց երևելի քաղաքներն հրեայ գերիներով, զորս բերաւ ի Պաղեստինէ յարշաւանին յԱսորիս, համանականապէս նաև Յունաց երևելի աստուածներուն պատկերներով յարշաւանին ի Փոքրն Ասիա և ի Յոյնս ընդ Միհրդատայ, ընդ որում էր նիզակակից ինքն Տիգրան։ Զարտաքին քաղաքականութենէ նորա միայն գիտենք ժամանակակից օտար պատմիչներէ ինչ ինչ կարևոր, որպիսի են թագաւորել նորա Ասորւոց, պատերազմն ընդ Հռոմայեցիս, նախ իբրև օգնական Միհրդատայ և ապա առանձինն, և պարտութիւն նորա։*

**2.** *Տիգրանայ վրայ հնագոյն և անգին յիշատակարան է Ստրաբոնի սա հատուածն, որ սակաւ տողերու մէջ կ'ամփոփէ այս հայ աշխարհակալին ամբողջ պատմութիւնն անաչառ։ «Տիգրան, ի զաւակէն Արտաքսիասայ, կալաւ իբրև թագաւոր զբունն Հայաստան, այն է զբովանդակ մասն երկրին, որ ձգի զՄարօք, զԱղուանիւք և զՎրօք մինչև ի Կողքիս և ի ծովեզերեայն Կապադովկիա, մինչ Արտանէս (ըստ Ստեփ․ Բիւզ․ Արշակէս) ի զաւակէն Զարիադրեայ, ժառանգէր զհարաւայինն Հայաստան, մանաւանդ զմասն արևմտից հարաւոյ, այլ ընդ հուպ արկաւ յաթոռոյն և սպանաւ ի Տիգրանայ, որ եկաց այնպէս միահեծան տէր համօրէն երկրին։ Բայց և ընդ Տիգրան անցին պէսպէս անցք։ Ի սկզբան արգելեալ էր առ Պարթևս իբրև պատանդ. սակայն յաջողեցաւ, տուեալ նոցա հովիտս եօթանասուն ի Հայոց՝ առնուլ զթագաւորութիւնն. յետոյ զօրացեալ՝ հան ի նոցանէ զոր միանգամ ետն, այլև աւերէր զերկիր նոցա, մանաւանդ շուրջ զՆինուէիւ և զԱրբեղաւ։ Յետ այնորիկ հնազանդեցոյց ընդ իւրով իշխանութեամբ զԱտրպատական և զԿորդուս, և առ սակաւ սակաւ զմնացեալ մասն Միջագետաց. հուսկ ապա անցեալ ըստ Եփրատ՝ նուաճէր զինու զօրութեամբ զԱսորիսն իսկ և զՓիւնիկէ։*

Հասեալ նորա յայնչափ աստիճան զօրութեան՝ արկ մօտ ի կամուրջն կամ Զեւգմայն Եփրատայ՝ հիմն նորոյ քաղաքին, զոր կոչեաց Տիգրանակերտ, և ուր ժողովեաց զբնակիչս երկոտասան քաղաքաց Յունաց, զոր անմարդացոյց յայն սակս։ Այլ մինչև ի գլուխ հանեալ նորա յոր ձեռն արկեալ էր՝ կրեաց յարձակումն ի յաղթողէն Միհըրդատայ՝ ի Ղուկուղղեայ, որ տուեալ հրաման բնակչացն Տիգրանակերտի դառնալ ի քաղաք ծննդեան իւրեանց՝ կործանեաց զմայրաքաղաքն նոր, որ չև էր հասեալ ի կատարումն, և ած զնա լինել աւան դուզնաքեայ, ապա և զՏիգրան վանէր յերկրէն Ասորւոց և ի Փիւնիկեայ» (Ստր. ԺԱ. 15)։ Զլինելն Տիգրանայ կանխաւ պատանդ առ Պարթևս՝ կը յիշէ նաև Պոմպէոս Տրոգոս, մատենագիր Ա. դարու առ Յուստինեայ (Դպր. ԼԸ. 3). «Տիգրան թագաւորէր յայնժամ ի Հայս։ Լեալ սորա երբեմն պատանդ ի Պարթևս՝ արձակեցաւ յետոյ ի նոցանէ ի թագաւորութիւն հարց իւրոց»։

**3.** Գլխաւոր գործք Տիգրանայ են սակայն թագաւորել նորա Ասորւոց (87—63) և պատերազմն ընդ Հռոմայեցիս։ Ըստ Ստրաբոնի, ինչպէս տեսանք՝ Տիգրան զինու զօրութեամբ տիրեց Ասորւոց և Փիւնիկէի, անտարակոյս ոչ առանց հաճութեան գէթ մեծի մասին Ասորւոց, որ ձանձրացած էին յանպիտանութենէ վերջին Սելևկեանց։ Յետ մահուն Անտիոքոսի մեծի (186), զորոյ պարտութիւնն յիշեցինք վերագոյնն՝ Սելևկեանց տէրութիւնն սկսաւ նուազել և տկարանալ։ Սելևկոս Փիլոպատոր (Հայրասէր, 186—174), որ չէր մոռացած թէ Պերգամոնի թագաւորն Եւմենէս իւրովսանն նպաստած էր ի պարտութիւն հօր նորա Անտիոքոսի մեծի առ Մագնեսեաւ՝ ի պատերազմին Փառնակայ արքային Պոնտոսի ընդդէմ Եւմենեայ (տես ի վերոյ) եղաւ օգնական Փառնակայ, բայց արգելաւ ի Հռոմայեցւոց և սպանաւ թունաւորեալ յիւրմէ պաշտօնէէն Հեղիոդորոսէ թելադրութեամբ Եւմենեայ։ Յաջորդ Սելևկոսի Անտիոքոս Եպիփան (Երևելի, 174—164), զոր արժան էր կոչել մանաւանդ, ասէ Պողիբիոս, Եպիման (Անմիտ)՝ թագաւորեց արդարև անմտաբար, թէպէտ ցուցուց ոչ սակաւ քաջութիւն ի պատերազմին ընդդէմ Մայրասէրն Պտղոմեայ, և մտաւ ի Պեղուսիոն. բայց Հռոմայեցի պրետորն Պոմպիլիոս մատոյց նմա նամակ ի ծերակուտէն, որ կը հրամայէր նմա առ ժամուն ելանել յԵգիպտոսէ։ Անտիոքոս խռովեցաւ, բայց հնազանդեցաւ։ Այս Անտիոքոս է, որ փորձեց հաստատել մի միայն կրօնս իւր բոլոր տէրութեան մէջ՝ մուծանելով ամենայն ուրեք յունական պաշտօն, բայց տեսաւ ընդդիմութիւն, մանաւանդ ի Հրէից, զորոց տաճարը պղծած էր կռոց պատկերներով, և տուաւ առիթ Մակաբեանց՝ զդէմ ունել դիւցազնաբար

և լինել ինքնօրէն։ Անտիոքոս առ ագահութեան փորձեց կողոպտել զերևելի մեհեանն Անահտայ յԵղիմայիս (ի Պարսս). բայց արտաքսուելով քաղաքացիներէն ամօթով՝ մեռաւ չարաչար ի Բաբելոն, ըստ Պարսից՝ ի պատիժ սեղանակապուտ փորձին ընդդէմ մեհենին իւրեանց, ըստ Հրէից՝ պղծելուն համար Երուսաղէմի տաճարին սրբութիւնը։ Անտիոքոսի Եպիփանու յաջորդեց որդին Անտիոքոս Եւպատոր (Հօրամոյն, 164—162). բայց յետ սակաւուց Սելևկեայ Փիլոպատովրի որդին Դեմետրիոս Ա. Սովտէր, որ էր պատանդ ի Հռոմ՝ խոյս տալով եկաւ յԱսորիս, և յաղթելով Անտիոքոսի սպան զնա և թագաւորեց (162—150). բայց ատելի եղաւ ոչ իւր հպատակաց միայն, այլև դրացի ազգաց, որ յարուցին նմա ոսոխ զԱղեքսանդր ումն Բաղա, որ յաղթելով Դեմետրիոսի՝ թագաւորեց (149—146), բայց ինքն ևս յաղթուեցաւ ի ժառանգէն Դեմետրիոսի Դեմետրիոսէ Բ. Նիկատոր կոչեցելոյ և սպանաւ։

Ժառանգք Դեմետրիոսի Սովտերայ, Դեմետրիոս Նիկատոր, որ քռնուեցաւ գերի ի Պարթևաց, և եղբայր նորա Անտիոքոս Է. Սիտիդէս, որ սպանաւ յԵղիմայիս, ի միոջէ կողմանէ, և բռնաւորք ոմանք միւս կողմանէ—ինչպէս Տրիփոն ումն և Աղեքսանդր Զեբինա, որդի Աղեքսանդրի Բաղայի, ապա Անտիոքոս Ը. Գրիպոս, որդի Դեմետրիոսի Նիկատորայ, և եղբայր նորա ի մօրէ Անտիոքոս Թ. Կիզիկեցի, որդի Անտիոքա Սիդետայ և վեցեքին որդիք Անտիոքոսի Գրիպոսի, Սելևկոս Զ, Անտիոքոս ԺԱ Եղբայրասէր, Փիլիպպոս, Դեմետրիոս Գ Եւքերոս (երջանիկ), և Անտիոքոս ԺԲ, որ կոչուեցաւ Դիոնիսիոս, ինչպէս նաև Անտիոքոս Ժ, որ կոչեցաւ բարեպաշտօն, որդի Անտիոքոսի Կիզիկեցւոյ, —146-է մինչև 85 ներքին կռիւներով, սոսկալի արիւնհեղութեամբ, քաղաքներ աւերելով և մեհեաններ կողոպտելով այն աստիճան զզուեցուցին ժողովուրդը, որ Տիգրան մեծ դիւրաւ կարաց գտնել մուտ յԱսորիս (85), որպէս ասացաք՝ ոչ առանց հաճութեան ազգին։ Պոմպէոս Տրոգոս, կամ մանաւանդ Յուստինոս ի համառօտութեան նորա՝ ղթագաւորելոյն Տիգրանայ ի վերայ Ասորւոց ունի այսպէս։ «Եւ զի էր ի մէջ երկուցն եղբարց (Անտիոքոսի Ը. և Անտիոքոսի Թ.) անհաշտ թշնամութիւն՝ իբրև պատերազմն. անողոք սպառէր և՛ զթագաւորսն և՛ զթագաւորութիւնն Ասորւոց՝ ժողովուրդն այնուհետև դիմէր յարտաքնոցն օգնականութիւն, և խնդրէր զօտարսն կացուցանել թագաւոր։ Ոմանք յօժարէին ի Միհրդատ արքայ Պոնտոսի, այլք՝ ի Պտղոմէոս թագաւոր Եգիպտացւոց. և զի Միհրդատ էր ի կռուի ընդ Հռոմայեցիս, և Պտղոմէոս համակ թշնամի Ասորւոց՝ միաձայն հաւանութեամբ ամենեցուն ընտրեցաւ Տիգրան արքայ Հայոց, որ ոչ հզօր

միայն էր ինքնին, այլև դաշնակից Պարթևաց։ Տիգրան, կոչեցեալ ի թագաւորութիւն անդր Ասորւոց՝ վայելէր խաղաղութեամբ ամս ութևտասն ի թագաւորութեանն, ոչ տուեալ երբէք պատերազմ ընդ ումեք, և ոչ այլ ուստեք կրեալ յարձակումն։ Բայց երկիրն, թէպէտև ապահով ի թշնամեաց՝ ապականէր գետնաշարժիւ, յորմէ կորեան հարիւր և եօթանասուն հազար մարդիկ, և ոչ սակաւք ի քաղաքաց։ Այս նշանք, ըստ հմայից, զփոփոխութենէ իրաց յայտ առնէին։ Արդարև իսկ յետ մատնելոյ Տիգրանայ ի պարտութիւն ի Ղուկուղղեայ՝ Անտիոքոս որդի Կիզիկենայ կարգեցաւ ի նմին իսկ ի Ղուկուղղեայ թագաւոր Ասորւոց։ Այլ զոր Ղուկուղղոսն ետ՝ առնոյր յետոյ Պոմպէոս, և Կիզիկենայ, որ պահանջէր զթագն՝ տանէր պատասխանի. «Զտամ, ասէ, թագաւոր Ասորւոց, եթէ խնդրեցէ ես ազգն՝ զայնպիսի ոք, որ զամս ութևտասն, մինչ ունէր Տիգրան զերկիրն՝ թաքուցեալ յանկեան ուրեք աշխարհին Կիլիկեցւոց, ապա ի պարտելն Տիգրանայ ի Հռոմոց՝ պահանջէ զայլոց վաստակոց զվարձս. Եւ զի չիշխեաց հանել զթագաւորութիւնն ի Տիգրանայ՝ ապա ի մեկնելն նորա չէ պարտ տալ նմա՝ որում պաշտպանելն ոչ գիտաց, և ոչ մատնել միւսանգամ կամիցիմ զԱսորիս ասպատակութեան Հրէից և Արաբացւոց»։ Այսպէս Պոմպէոս առնէր զԱսորիս նահանգ, և յանմիաբանութենէ թագաւորաց համազգեաց՝ արևելք լինէին տակաւ Հռոմայեցւոց» (Յուստ. Խ. 1. 2)։ Ըստ Յովսեպոսի՝ Հրեայք լսելով, թէ Տիգրան մտաւ յԱսորիս և ունէր ի մտի գալ ի վերայ Հրէից ես՝ երկեան յոյժ։ Թագուհին Աղեքսանդրա կամ Սողոմէ (79—71) ղրկեց հրեշտակս, մեծամեծ ընծայիւք առ Տիգրան, մինչ պաշարած էր նա (70) զՊտղոմայիդ (Աքր) քաղաք Փիւնիկեցւոց, զոր ունէր Սեղինէ կամ Կղէոպատրա, Անտիոքոսի Կիզիկեցւոյ այրին. և Տիգրան հաճելով, յետ առնլոյ զՊտղոմայիդ մեկնեցաւ առանց մտնելոյ ի Հրէաստան, մանաւանդ որ լսեց, թէ Ղուկուղղոս, յետ յաղթելոյ Միհրդատայ՝ կը խաղար ի վերայ Հայոց։ «Զայնու ժամանակաւ լու եղև, եթէ Տիգրան արքայ Հայոց մտեալ էր յԱսորիս հինգ հարիւր հազար արամբք, և ունէր ի մտի գալ նաև ի Հրէաստան։ Այսպիսի մեծ և անակնկալ վտանգ զարհուրեցոյց զտիկինն Աղեքսանդրա և զհամօրէն թագաւորութիւնն։ Առաքեաց նա ընծայս մեծամեծս առ Տիգրան ի ձեռն հրեշտակաց, մինչ էր նա ի պաշարել զՊտղոմայիդ։ Բամբիշն Սեղինէ, Կղէոպատրայն կոչեցեալ, որ տիրէր յայնժամ Ասորւոց՝ ետ խրատ հպատակաց իւրոց քաջութեամբ զդէմ ունել Տիգրանայ։ Հրեշտակք Աղեքսանդրայ զամենայն փոյթ ի մէջ առեալ՝ ածին զթագաւորն յաղերս, ունել զուխտ տիկնոջն և ազգին։ Տիգրան ընկալաւ զպատգամաւորսն քաղցրու-

թեամբ և արձակեաց բարւոք ակնկալութեամբ։ Իբրև առ նա զՊըտղոմայիդ, լուեալ եթէ Ղուկուղղոս, որ զհետ պնդեալ էր Միհրդատայ, առանց ի բուռն արկանելոյ զնա—զի զերծաւ նա ի Վիրս—մտեալ ի Հայս աւերէր և յաւարի առնոյր զերկիրն՝ դարձաւ յետս» (Յովս. Նախն. պտմ. ԺԳ. 24)։ Տիգրանայ գրաւելն զԱսորիս և արութիւնք Միհրդատայ ի Փոքուն Ասիա լինէին այնպիսի ժամանակ (117—87), մինչ Հռոմայեցիք զբաղեալ էին ներքին և արտաքին կռիւներով առ Մարիոսիւ և Սուղղայիւ, ինչպէս արդէն տեսանք։

4. Յետ անկանելոյ Ասիոյ 190-էն հետէ, այն է ի պարտութենէն Անտիոքոսի մեծի առ Մագնեսեաւ, ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց՝ թագաւորք Պոնտոսի էին, որ քան զայլս աւելի կամէին թօթափել զայն ազդեցութիւն, և զայս առնել չէր հնար՝ բայց նուաճելով համօրէն Փոքր Ասիա։ Ուստի Փառնակ արքայ Պոնտոսի (184) սկսաւ աշխարհակալութիւնը. նուաճելով զՍինոպ քաղաք Պափղագոնիոյ՝ արար զայն թագաւորանիստ, և յարձակեցաւ ի վերայ Եւմենայ արքայի Պերգամոնի, բայց հարկեցաւ յերկիւղէ Հռոմայեցւոց կալ յետս, տալով տուգանս պատերազմի։ Այս առթիւ եղաւ ի մէջ թագաւորաց Փոքուն Ասիոյ այն երևելի դաշնադրութիւնն, որոյ մասնակիցներէն մին էր նաև Արտաքսիաս արքայ վերին Հայաստանի, ինչպէս արդէն յիշուեցաւ։ Յաջորդն Փառնակայ Միհրդատ Ձ. (157) այն ձախողութենէն զանգիտելով՝ մնաց բարեկամ Հռոմայեցւոց, բայց որդի և յաջորդ նորա Միհրդատ Է. Եւպատոր ձեռն արկ խնդրել իւր հաւուն Փառնակայ վրէժը։

5. Միհրդատայ և նորա պատերազմներուն վրայ կը գտնենք բազում ինչ առ Ապպիանու, Պլուտարքեայ, Վէլլէոսի, Յուստինոսի, առ Դիոնի և առ այլս՝ որ չեն ժամանակակից։ Ստրաբոն, իբրև աշխարհագիր՝ կ'անցնի միայն ուրեք ուրեք համառօտ. ասէ սակայն, թէ առ իւրով ժամանակաւ կային պատմիչք գործոց Միհրդատայ, ուստի հարկաւ ժամանակակից, բայց թէ ո՛յք էին՝ չյիշեր։ Ժամանակակից պատմիչ կամ գէթ վկայ գործոց Միհրդատայ ունիմք զնոյն ինքն Ստրաբոն և զԿիկերոն, մին աշխարհագիր և միւսն ճարտարախօս, որ ըստ դիպաց և եթ կը յիշեն զիրս Միհրդատայ, են սակայն արժանի հաւատարմութեան։ Ստրաբոն ի համառօտ պատմութեանն զՏիգրանայ, ինչպէս տեսանք ի վերոյ՝ կը յիշէ միայն զառումն Տիգրանակերտի ի ձեռն Ղուկուղղեայ և զվանումն Տիգրանայ յերկրէն Ասորւոց և Փիւնիկէի, առանց ամենևին յիշելու նորա դաշնակցութիւնն ընդ Միհրդատայ. բայց յիշելով Ղուկուղղոսի գալն ի վերայ Տիգրանայ՝ կը ցուցնէ թէ գիտէր զՏիգրան դաշնակից և օգնական Միհրդատայ։ Իսկ զՄիհրդատայ կը յիշէ միայն

ինչ ինչ ի Հարաւանցի. զորօրինակ զգնալն Նորա ի Բոսպոր Կիմմերեան, բայց իբրև Հալածեալ ի Հայրենի երկրէն, այսինքն զփախուստ Նորա յետ պարտութեանն ի Պոմպէոսէ.—«Այսպիսի են կեանք ժողովրդոց երկրին (Բոսպորոսի)։ Իսկ զիշխանութիւն տէրութեանն յանձնէ ցեղապետաց, որ սեփծուղն կոչին, և են ընդ իշխանութեամբ այլոց բռնակալաց. Հենիոխքն, զորօրինակ, ունէին թագաւորս չորս ի ժամանակին՝ զի Միհրդատն Եւպատոր, Հալածեալ ի թագաւորութենէ Հարց իւրոց, Հարկէր երթալ խնդրել տեղի ապաստանի ի Ներքին կողմանս անդ Բոսպորայ» (Քրիմէ, Ստր. ԺԱ. Բ. 13)։ Ստրաբոն գրէ նոյնպէս զարշաւանս Միհրդատայ ի Կողքիս (Կովկասի կողմերը).– «Ի Հին ժամանակս, ասէ, էր արդարև Նշանաւոր երկիրն, որպէս դիւրին է դատել յառասպելաց անտի արշաւանին Յասոնի. բայց յետոյ բաժանեցաւ երկիրն ի բազում գաւառս, որոց տիրէին թագաւորք դուզնաքեայք, որ սեփծուղն կոչէին. այլ իբրև զօրացաւ յոյժ Միհրդատ Եւպատոր՝ Համօրէն Կողքիս Նուաճեցաւ։ Այլ Միհրդատ ծառայս բարեկիրս և զիւր մտերիմն առաքէր անդր կուսակալ, որպէս զՄովափեռնէս զիմ մօրեղբայր» (Անդ. 18)։ Եւ այլուր (ԺԲ. Գ. 11) խօսելով զՍինոպայ՝ ասէ. «Քաղաքս այս... եղև ազատ բազում ժամանակս, և չկարաց պահել զինքնօրէնութիւնն մինչև ի սպառ. պաշարեալ առաւ Նախ ի Փառնակայ, ապա ի պայազատաց Նորա մինչև (ի Միհրդատ) յԵւպատորն, կամ լաւ ևս՝ մինչև ի կործանումն մեծի թագաւորին ի զինուց Հոռոմոց»։ Իսկ զպատմագրաց Միհրդատայ ասէ Ստրաբոն այսչափ ինչ. «Պատմիչք պատերազմացն Միհրդատայ, առ որս պարտ իցէ մեզ դիմել՝ յիշեն Նախ զԱքէս, ապա զԿողքացիս», այլովքն Հանդերձ (ԺԱ. Բ. 15)։ Ոչ ժամանակակից միայն, այլև միջամուխ էր Կիկերոն, որ ի ճառին զՄանիղեան օրինաց (pro lege Manilia), և ի ճառին ի պաշտպանութիւն Մուրենայ՝ կը Համառօտէ Միհրդատայ պատերազմներուն պատմութիւնը։ Մանիղիոս տրիբուն ժողովրդեան, կուսակից Պոմպէի, առաջարկեց (68) տալ Պոմպէի զՀրամանատարութիւն պատերազմին ընդդէմ Միհրդատայ, և Կիկերոն ջերմաջերմ պաշտպանեց զառաջարկութիւնն Մանիղեայ։

Կնէոս Պոմպէոս էր Սուղղայի կուսակիցներէն, ազնուապետական, բայց սիրելի Նաև ժողովրդեան։ Եղած էր գործակից Կրասոսի ի քաղաքային պատերազմին ի Սպանիա առ Սերտորիոսիւ (77—72) և ի պատերազմին գերեաց յԻտալիա առ Սպարտակոսիւ (73—71). Նուաճած էր մանաւանդ զՀէնս, որ աւազակութեամբ մեծամեծ վնասներ կը գործէին ի Միջերկրականին ծովեզերեայ քաղաքաց Հռոմայեցւոց (67)։ Այս պատերազմներէն ետքը առաւ Պոմպէոս

զօրաց հրամանատարութիւնն ընդդէմ Միհրդատայ փոխանակ Դուկուղղոսի։ Իսկ Դիկինիոս Մուրենայ էր տեղակալ Սուղղայի և բազում իւիք եղև նպաստ ի յաղթութիւնն նորա (87) ընդդէմ Արքեղայոսի զօրավարին Միհրդատայ առ Քերոնեաւ։ Ամբաստանեալ ի Կատոնէ, որպէս թէ նենգութեամբ առած էր Մուրենայ զօրավարութիւնը՝ ջերմաջերմ պաշտպանուեցաւ ի Կիկերոնէ։ Այս երկու ճառք Կիկերոնի կ՚ամփոփեն արդարև Միհրդատայ և դաշնակցին նորա Տիգրանայ պատերազմներուն վրայ ընդ Հռոմայեցիս գրեթէ ամէն կարևոր կէտ։ Բայց և այնպէս, որպէս զի ամենևին առանց պատմական վկայութեան չթողուին այս կարևոր անցք, որ մեզ ևս կը վերաբերին, միանգամայն ի լուսաւորութիւն Կիկերոնի ճառերուն, (յորոց կարևոր մասեր, որ մեր խնդրոյն անկ են՝ պիտի բերենք ի ստորև)՝ գնենք հոս Միհրդատայ վրայ երկու ընդարձակ հատուած, որ զՄիհրդատ և զպատերազմն նորա ընդ Հռոմայեցիս կը ցուցնեն մեզ բովանդակ։ Այս պատմական հատուածոց մին է Ցուստինոսի (մատենագիր Բ. դարու). և միւսն Ենեայ Փլորայ (մատենագիր ըստ ոմանց Ա, ըստ այլոց՝ Բ. դարու)։ Ցուստինոս կ՚առնու ի սկզբանէ և կը բերէ մինչև ի պատերազմն ընդ Հռոմայեցիս՝ առանց մտնելու յանցս այն մեծ պատերազմին. Փլորոս կ՚սկսի՝ ուր կը թողու Ցուստինոս։ «Ժողովուրդն հռոմէական կամեցաւ տալ վարձս թագաւորաց՝ որոց լեալ էր նմա օգնական ընդդէմ Արիստոնիկեայ արքային Պերգամայ (թշնամւոյն Հռոմայեցւոց)։ Միհրդատ (Զ.) արքայ Պոնտոսի էառ զվերինն Փռիւգիա. որդիք Արիարաթայ արքայի Կապադովկացւոց, որ մեռեալ էր ի պատերազմի՝ ընկալան զԼիկայոնիա և զԿիլիկիա։ Այսպէս ժողովուրդն հռոմէական ընդ որդիս իւրոյ դաշնակցին գնաց ազնուագոյնս քան զմայր նոցա. քանզի մինչ Հռոմ ի նոցա տխեղծ հասակին ընդարձակէր զտէրութիւն նոցա՝ մայրն զկեանս նոցա բառնայր։ Լաւոդիկեայ (այս էր անուն կնոջն) եղեն յԱրիարաթայ մանկունք վեց, յորոց բազումք արդէն հասեալ էին յարբունս. ուստի երկուցեալ կնոջն, թէ ընդ հուպ կորուսցէ զիշխանութիւնն՝ զհինգն ի նոցանէ կորոյս դեղովք. կրտսերագոյնն զերծեալ յանագորունութենէ մօրն՝ եղև թագաւոր յետ մահուն Լաւոդիկեայ, զոր վասն անգգամութեանն չարամահ սատակէր ժողովուրդն։ Իսկ Միհրդատ (Զ) արքայ Պոնտոսի մեռանէր յանկարծ, թողեալ որդի մի լիւր անուն, որ եհաս անտագան ուրեմն յայնպիսի մեծութիւն, մինչև գլել զթագաւորս ոչ իւրոյ դարուն միայն, այլև զորս յառաջ քան զնա եղեն։ Զամս քառասուն տուեալ պատերազմ ընդ Հռոմայեցւոց՝ ելևելս առնէր գնոքօք. հալեալ ի Սուղղայէ, ի Դուկուղղեայ և յայլոց զօրավարաց

քաջաց, հուսկ ապա ի մեծէն Պոմպէոսէ՝ հանապազ առնոյր անդրէն զէնս ուժգնագոյնս և պայծառագոյնս. պարտութիւնքն առնէին զնա ևս իմն աչագին։ Հուսկ ուրեմն մեռանէր ի ծերութեան, ոչ բռնի ինչ ի թշնամեաց, այլ ինքնակամ և ի թագաւորութեան անդ իւրոց հաւուց, զժառանգութիւն նոցա թողեալ իւրուրոյն որդւոյն։ Երկինք իսկ լինէին գուշակ նշանօք զառյապա մեծութենէ նորա։ Զի յամին, յորում ծնաւ նա և յորում սկսաւ զառաջինն թագաւորել՝ զաւուրս եօթանասուն երևէր աստղ գիսաւոր այնպէս պայծառ, մինչև թուել բորբոքել համօրէն երկնից։ Տարածութիւն նորա ունէր զչորրորդ մասն երկնից, պայծառութիւնն յաղթէր արեգական, և ելանելն նորա և մտանել տևէր ժամս չորս։ Ի մանկութեանն Միհրդատ էր նշաւակ նենգութեան խնամակալաց, որոց հեծուցեալ զնա յերիվար ամեհի՝ ստիպէին արձակել նիզակ յարշաւանի. այլ մանուկ իշխանն վարեալ զնժոյգ իւր ճարտարութեամբ ի վեր քան զիւր տիս՝ ունայնացուցանէր զդաւն։ Յայնժամ մատաբերեցին ի թոյն, և նա առ երկիւղին ըմպէր յաճախ անդեղեայս, և հզօր դարմանովք կացոյց զանձն այնպէս յապահովի ի հնարից նոցա՝ մինչև ի ծերութեանն կամեցեալ առնուլ թոյն՝ ոչինչ ստնանէր նմա։ Կասկածեալ ապա, թէ առ ի չգոյէ թունոյ թշնամիք նորա արկցեն սուր ի կիր՝ կեղծաւորէր սիրել զորս. ուստի զամս եւթն ոչ յագարակի և ոչ ի քաղաքի ագանէր ընդ յարկաւ, այլ թափառելով անցուցանէր զամենայն գիշեր ի խորշս լերանց, առանց տալոյ ումեք գիտել զիւր դադար։ Անդ կրթէր զանձն մերթ ի փախչել և մերթ ի պնդել զհետ էրէոց. էր զի և ոգորէր ընդ նոսա։ Այսպիսի կենօք զգուշացաւ ի դարանաց և պնդեաց զմարմին իւր խստամբերութեամբ։ Հասեալ ի տիս վարելոյ զիշխանութիւնն՝ խորհեցաւ ընդարձակել մանաւանդ զտէրութիւնն՝ քան իշխել որում ունէրն։ ԶՍկիւթացիսն, ցայնժամ աննկունս, որոց սատակեալ էր զԶոպիւռիոն զօրավար Աղեքսանդրի մեծի երեսուն հազարօքն, սպանեալ զԿիւրոս և զերկերիւր հազարս ի Պարսից, և փախստական արարեալ զՓիլիպպոս արքայ Մակեդոնացւոց՝ նուաճէր մեծաւ յաջողութեամբ։ Յաղթութեամբն այնուիկ զօրացեալ՝ կալաւ զՊոնտոս և ապա զԿապադովկիա։ Յետոյ ապա ի մտի եդեալ գրաւել զԱսիա՝ թողոյր դադտ զթագաւորութիւն իւր, և առանց ուրուք գիտելոյ շրջեցաւ ընդ աշխարհն բարեկամօք ոմամբք առ ի տեղեկանալոյ անձամբ հանգամանաց երկրին և դրից միոյ միոյ ի քաղաքաց։ Անտի անց ի Բիւթանիա, և որպէս թէ տէր լեալ Ասիացւոց՝ ուսաւ զհանգամանս տեղեացն, որ մարթէին նպաստ լինել նմա ի յաղթութիւն։ Ապա դարձ արարեալ ի թագաւորութիւն իւր, ուր կարծէին զնա

մեռեալ՝ գտանէ որդի մի ի մատաղ տիս, զոր ծնեալ էր Լաւոդիկէ քոյր նորա և կին՝ յօտարութեան անդ առնն։ Այլ մինչ մաղթէին նմա և՛ զդարձն իւր այսրէն, և՛ զծնունդ որդւոյն՝ թոյնն սպառնայր կենաց նորա։ Լաւոդիկէ, որ կարծելով զնա մեռեալ, տուեալ էր զանձն հոմանեաց՝ ակն ունէր ծածկել զյանցանսն այլով իմն ոճրով, որ ահաւոր ևս էր, և ի գալստեան առնն պատրաստէր նմա թոյն։ Միհրդատ տեղեկացեալ դաւոյն ի գերւոյ ումեմնէ՝ պատժէր զգործիչսն։ Ի հասանել ձմերան՝ անցուցանէր զայն ո՛չ ի խնջոյս, այլ ի ճամբարս. ո՛չ ի ծոց հանգստեան, այլ ի կրթութիւնս զինուորութեան. ո՛չ ի մէջ ընկերաց ուրախութեան, այլ ընդ ոսոխս արժանաւորս, վարժեալ զանձն ի ձիավարել և մրցել վասն վարձուց ըմբշութեան և ձիարշաւի։ Զօրն նորա ևս կրթէր զանձն հանապազ ի տանել իբրև զնա աշխատութեան և գործել զանձն անյաղթ իբրև զթագաւոր իւր։ Միաբանեալ ընդ Նիկոմեդայ (արքայի Բիւթանացւոց)՝ եմուտ կալաւ նա զՊափղագոնիա և բաժանեաց զայն ընդ իւրում դաշնակցին։ Իմացեալ ծերակուտին, եթէ թագաւորքն երկոքին գրաւեցին զերկիրն՝ առաքէր հրեշտակս առ նոսա, հրաման տուեալ դարձուցանել զայն յառաջին տէր նորա։ Միհրդատ, որ մեծութեամբ զանձն հաւասար Հռոմայեցւոց կարծէր՝ ետ պատասխանի ամբարտաւանութեամբ, թէ հօր նորա ժառանգեալ էր զայն թագաւորութիւն. զարմանալ ևս, թէ զի՞րդ որ ինչ հօր ուրուք էր առանց հակառակութեան՝ չանկանիցի որդւոյն։ Եւ առ ոչինչ զսպառնալիսն համարեալ՝ կալաւ և զԳաղատիա։ Իսկ Նիկոմեդ չգտեալ բարուրս՝ խոստանայր տալ այսրէն զՊափղագոնիա իւրում տեառնն։ Ապա փոխեալ զանուն որդւոյն ի Պիղեմէն, որ էր հասարակաց անուն թագաւորաց Պափղագոնացւոց՝ պահեաց զերկիրն այնու պիտակ անուամբ, որպէս թէ դարձուցեալ իցէ զաշխարհն ի տոհմ անդր բնակ թագաւորաց։ Այսպէս ծանակ լեալ հրեշտակացն՝ դառնային ի Հռոմ։ Միհրդատ յետ գործելոյ զառաջին սպանութիւն իւր, ի մահ մատնելով զիւր կին՝ եդ ի մտի կորուսանել զորդիս միւսոյ ևս քեռ իւրոյ, որ նոյնպէս Լաւոդիկէն կոչէր, այրւոյն Արիարաթայ արքայի Կապադովկացւոց, զոր տուեալ էր Միհրդատ սպանանել ի ձեռն Գորդեայ։ Զի՞նչ օգուտ էր նմա տալ փողոտել զհայրն, եթէ թողոյր զորդիսն յաջորդել նմա յաթոռն, զոր տենչայր յափշտակել։ Մինչ յայսմ մտաց խորհրդի էր նա՝ լսէր եթէ Նիկոմեդ արքայ Բիւթանացւոց կալաւ զԿապադովկիա, որ կայր մնայր անտերունչ յետ մահուան թագաւորին, և անդէն որպէս թէ առ գթոյն առաքէր օգնութիւն քեռ իւրում մերժել զՆիկոմեդ։ Այլ Լաւոդիկէ արդէն ի բանի լեալ էր ընդ Նիկոմեդայ և եղեալ նորա կին։

Զայրացեալ Միհրդատայ՝ հալածէր զզօրսն Նիկոմեդայ յաշխարհէն Կապադովկացւոց և տայր զթագաւորութիւնն զայն որդւոյ քեռն իւրոյ. գործ արդարև գեղեցիկ, եթէ չէր լեալ նմա առիթ ոճրոյ։ Արդարև յետ ամսոց ինչ կերպարանէր կոչել յաքսորէն զԳորդիոս, յորոյ ձեռն սպանեալ էր նա զԱրիարաթ. ակն ունէր եթէ մանուկ թագաւորն ընդդիմացեալ դարձի առնն՝ տայցէ պատճառս պատերազմի, և կամ, եթէ հաճեսցի՝ մարթ իցէ նմա կորուսանել զօրքն ձեռամբ սպանչի հօրն։ Իմացեալ մանուկն Արիարաթ զխորհուրդն Միհրդատայ և զայրացեալ տեսանել զսպանող հօրն իւրոյ կոչեցեալ յաքսորէն հրամանաւ մօրեղբօրն՝ գումարեաց զօր բազում։ Միհրդատ հան ի ճակատ ութսուն հազար հետևակ, տասն հազար հեծեալ և կառս գերանդաւորս վեցհարիւր. այլ տեսեալ զի քեռորդին իւր, գտեալ օգնութիւն ի թագաւորաց դրացեաց, հանէր ընդդէմ նորա ոչ սակաւ զօրութիւն քան զնորայն՝ երկուցեալ յելից պատերազմին դիմէր ի դաւաճանութիւն, և հրաւիրեալ զմանուկ որքայն ի խորհուրդ՝ չոգաւ առ նա, թագուցեալ դաշոյն զմիջովն։ Իբրև այրն առաքեալ յԱրիարաթայ ըստ սովորութեան թագաւորաց յուզել զՄիհրդատ՝ տանէր զձեռն իւր խնամով յորովայն անդր նորա՝ ասէ Միհրդատ ընդ խաղ. Զգոյշ լեր, գուցէ գտանիցես այլ զէնս քան զոր խնդրեսն։ Այսու կատակաւ թագուցեալ զմատնութիւնն՝ առնոյր մեկուսի զմանուկ թագաւորն պատճառանօք խօսելոյ ի ծածուկ, և հարկանէր զնա յանդիման երկուցն բանակաց. և տայր զԿապադովկիա որդւոյ իւրում, որ էր ութամեայ, տուեալ նմա անուն Արիարաթ, և զԳորդիոս խորհրդական։ Այլ Կապադովկացիքն տաղտկացեալք յանագորովնութենէ և ի զրկանաց գործակալացն Միհրդատայ՝ յետս կացին, և կոչեցին յԱսիացւոց աշխարհէն ուր սնեալն էր՝ զեղբայր թագաւորին իւրեանց, որ նոյնպէս Արիարաթ կոչէր։ Միհրդատ տուեալ պատերազմ ընդ նմա՝ հար զնա և եհան ընդ աշխարհն։ Թագաւորս այս մանուկ յետ սակաւուց հիւանդացեալ առ վշտին մեռանէր։ Ի մահուան նորա երկուցեալ Նիկոմեդայ, թէ գուցէ Միհրդատ, որ տիրեալ էր Կապադովկիայ, կամիցի և զԲիւթանիա կցել յայն՝ զերիտասարդ ոմն գեղեցիկ տեսլեամբ հաւանեցուցանէր ասել, թէ իցէ ի զաւակէն Արիարաթայ, որպէս թէ լեալ էին փոխանակ երկուցն՝ երեք որդիք, և խնդրել ի ծերակուտէն զթագաւորութիւն հօր իւրոյ։ Առաքէր ի Հռոմ և զկին նորա Լաւոդիկէ վկայել, եթէ արդարև եղեն նորա որդիք երեք յԱրիարաթայ։ Իմացեալ Միհրդատայ զնենգութիւնն՝ յետին ժպրհութեամբ առաքէր ի Հռոմ զԳորդիոս յայտ առնել ծերակուտին, թէ մանուկն զոր եդ ինքն յաթոռն Կապադովկացւոց՝

էր որդի Արիարաթայն այնորիկ, որ մեռեալ էր ի պատերազմելն վասն Հռոմայեցւոց ի կուսէն ընդդէմ Արիստոնիկեայ։ Սակայն տեսեալ ծերակուտին, եթէ գիտաւորութիւն երկուց թագաւորաց ևս էր յափշտակել թագաւորութիւն մի պիտակ անուամբք՝ հան զԿապադովկիա ի Միհրդատայ, և առ հաճեցուցանելոյ զնա՝ զՊափղագոնիա հանէ ի Նիկոմեդայ. ապա զի մի տրտմեցուսցէ զթագաւորսն զերկոսին, տալով այլոց զոր հանէրն ի նոցանէ՝ շնորհեաց երկուց ազգաց ևս զազատութիւն։ Այլ Կապադովկացիքն մերժելով զպարգևն՝ ասեն, եթէ չէ մարթ նոցա լինել առանց թագաւորի։ Ապա ծերակոյտն տայր նոցա թագաւոր զԱրիոբարզան։

**6.** Զայնու ժամանակաւ Տիգրան թագաւորէր ի Հայս։ Գնացեալ սորա երբեմն պատանդ ի Պարթևս՝ արձակեցաւ յետոյ ի նոցանէ ի թագաւորութիւն անդր հարց իւրոց։ Միհրդատ կամեցաւ առնել զնա դաշնակից իւր ի պատերազմին, զոր ի վաղուց անտի խորհէր տալ ընդ Հռոմայեցւոց։ Եւ զի Տիգրան չունէր ամենևին պատճառս տրտնջելոյ զՀռոմայեցւոց՝ Միհրդատ ի ձեռն Գորդեայ տայր նմա խրատ խաղալ ի վերայ Արիոբարզանայ, որ էր վատ տրանց։ Միհրդատ ի ծածկել զխորամանկութիւն իւր՝ տայր Տիգրանայ կնութեան զդուստր իւր Կղէոպատրա։ Ի խաղալ Տիգրանայ ի վերայ Արիոբարզանայ՝ խոյս տայր սա հանդերձ գանձիւքն ի Հռոմ, և այսպէս Միհրդատ տեսանէր զինքն տէր Կապադովկիայ օգնութեամբ Տիգրանայ։ Զայնու ժամանակաւ մեռեալ էր Նիկոմեդ, և նորին որդի, նոյնպէս Նիկոմեդ կոչեցեալ, արկեալ յաթոռոյն ի Միհրդատայ՝ գայր աղաչաւոր ի Հռոմ, և ծերակոյտն տայր վճիռ հաստատել միւսանգամ զերկոսին թագաւորսն իւրաքանչիւր յիւրում գահու։ Վասն այսր գործոյ առաքեցան Ակուիղիոս և Մանղիոս Մաղտինոս։ Յայս համբաւ Միհրդատ դնէր ուխտ դաշանց ընդ Տիգրանայ՝ կռուել ընդդէմ Հռոմայեցւոց, եդեալ ի մէջ իւրեանց պայմանս, զի քաղաքք և գաւառք նուաճեալք՝ լիցին Միհրդատայ, իսկ գերին և աւարն՝ Տիգրանայ։ Միհրդատ գիտացեալ քաջ զվտանգս պատերազմին զոր յարուցանէր՝ առաքէ հրեշտակս առ Կիմբրացիս, առ Գաղատս յոյնս, առ Սարմատս և առ Բաստառնս, խնդրել թիկունս օգնականութեան, քանզի վասն պատերազմին ընդ Հռոմայեցիսն, զոր խորհէր ի վաղուց՝ շահեալ էր նորա կանխաւ երախտեօք զմիտս ազգացն այնոցիկ։ Գումարէ նոյնպէս զօրս ի Սկիւթացւոց և վառէ զարևելս ընդդէմ Հռոմայ։ Դիւրաւ յաղթեաց Ակուիղայ և Մաղտինայ, որոց զօրքն համակ յԱսիացւոց անտի էին, եհան զնոսա յերկրէն հանդերձ Նիկոմեդաւ, և գտանէր ընդունելութիւն մեծ յամենայն քաղաքս։ Գտանէր ի նոսա ոսկի և արծաթ

բազում և պատրաստութիւն մեծ պատերազմի՝ արարեալ յառաջնոց թագաւորաց անտի։ Լեալ տէր այսչափ ընչից՝ թողոյր ամենայն քաղաքաց զպարտս նոցա, զառանձինն կամ զհասարակաց, և կացուցանէր զնոսա ազատս ի հարկաց զամս հինգ։ Ապա ժողովեալ զզօրս իւր՝ արկանէ նոցա ճառ, և չթողու ինչ՝ որ մարթէր գրգռել զնոսա ի վանել զՀռոմայեցիս յԱսիոյ։... Յետ այսպէս գրգռելոյ զզօրականն՝ ի քսաներորդ երրորդ ամի թագաւորութեան իւրոյ սկիզբն առնէ Միհրդատ պատերազմին ընդդէմ Հռոմայեցւոց» Յուստ. գպր. Լէ. ԼԸ.)։

Լսենք այժմ Փլորոսի։ «Ազգք Պոնտոսի ձգին ի հիւսիսոյ մինչև ի Պոնտոս Եւքսինոս, յորմէ առեալ է նոցա զանունն։ Էտէս է հնագոյն թագաւոր ազգացն այնոցիկ և աշխարհաց։ Յետոյ ապա իշխեաց նոցա Արտաւազ ոմն ի զաւակէ միոյ յեօթն իշխանացն Պարսից, և ապա ուրեմն Միհրդատ, առանց հակառակութեան մեծն ի թագաւորս անդ։ Բաւական եղև մեզ ամս չորս կռուել ընդդէմ Պիւռոսի, եօթնևտասն՝ ընդդէմ Աննիբաղայ. Միհրդատ զդէմ կալաւ մեզ զքառասուն ամ, մինչև պարտեալ յերիս արիւնահեղ ճակատս՝ ընկճեցաւ ի բարենշանէն Սուղղայ, ի Ղուկուղղեայ քաջէ և ի մեծէն Պոմպէոսէ։ Պատճառ այսր թշնամութեան, այն զոր ինքն եբեր ի մէջ առ Կասսիոս դեսպան՝ էր յարձակելն Նիկոմեդայ արքային Բիւթանացւոց ի սահմանս իշխանութեան իւրոյ։ Այլ արդեամբ՝ ամբարտաւանութիւնն էր, որով փքացեալ ցանկայր ունել զբովանդակ Ասիա, և եթէ գոյր հնար՝ զԵւրոպն իսկ գլխովին։ Յոյսս տային նմա յոյս և համարձակութիւն։ Քաղաքային կռիւք, որ պառակտէին զմեզ՝ թուէին նմա ժամ պատեհ. Մարիոս, Սուղղա, Սերտորիոս ցուցանէին նմա ի հեռուստ զկողս տէրութեանն մերկ։ Ի մէջ այնպիսի վիրաց ընկերհաշտութեանն և այնչափ յուզմանց և խռովութեանց՝ մրրիկ պոնտական պատերազմին պատրաստեալ ի հեռաւոր բարձունս անդ հիւսիսոյ և իբր այն թէ ընտրելով զժամանակն՝ եկն պայթել ի վերայ Հռոմայեցւոց վաստակելոց և մատնելոց յերկպառակութիւն։ Բիւթանիա բարձաւ իսկոյն յառաջնում ճգան պատերազմին։ Նոյն երկիւղ անդէն վարանեալ ունէր զԱսիա։ Քաղաքք և ժողովուրդք, որ ընդ մերով իշխանութեամբ՝ փութային իմն մտանել ընդ իշխանութեամբ թագաւորին։ Ամենայն ուրեք մօտ՝ շտապէր զպաղթութիւնսն, և անագորունութիւնն էր նմա փոխանակ քաջութեան։ Զի՞նչ քան զայն անագորունութիւն կայցէ արդարև, քան միով հրովարտակաւ հրաման տալ՝ սուր ի վերայ եդեալ կոտորել զամենայն այր հռոմայեցի, որ միանգամ գտանէր յԱսիա։ Յայնժամ բռնաբարեցան տունք և մեհեանք և բագինք,

ամենայն իրաւունք մարդկեղէնք և աստուածեղէնք։ Ահն և սարսափ Ասիացւոց հորդէր ևս թագաւորին ճանապարհ յԵւրոպա։ Տեղակալք նորա Արքեղայոս և Նէոպտողեմէոս, զորս զատուցեալ էր յԻւրոց զօրացն՝ ունէին զԿիկղադս, զԴեղոս, զԱթէնս իսկ, զզարդ Յունաստանի. այլ Հռոդոս եկաց հաւատարիմ մերում կողման։ Ահն զոր արկանէր թագաւորս այս՝ տարածէր ընդ աշխարհն Իտալացւոց, նա մինչև ի քաղաք անդր Հռոմայ։ Ղուկիոս Սուղղա, զօրավարն այն մեծ, աճապարեաց և անկեալ ուժգնութեամբ, որ նորա միայնոյ գործ էր՝ վանէր զնա։ Նախ պաշարէր զԱթէնս. տագնապէր զնա սովով, և ո՜ կարիցէ հաւատալ— զքաղաքն զայն, մայրն հնձոց, հասոյց յայնչափ՝ մինչև ուտել նմա զմարդոյ շաղիղ։ Աւերեաց արագ արագ զնաւահանգիստն Պիւրէայ, կործանեալ զվեցկին պարիսպ քաղաքին, և յետ նուաճելոյ զբնակիչսն ապախտաւորս քան զամենայն մարդիկ (զի այսպէս կոչէր նա զաթենացիս)՝ եթող նոցա զվնասն ի շնորհս նախնեաց նոցա, կրօնիցն պաշտամանց և վասն համբաւոյ անուան նոցա։ Ապա հալածեալ յԵւբէայ և ի Բէովտիայ զպահապան զօրս թագաւորին՝ ցրուեաց զամենայն զօրութիւն նորա յերկուս ճակատս, առ Քերոնեաւ և առ Որքոմենաւ։ Հուպ ընդ հուպ անցեալ յԱսիա՝ յաղթեաց նմին իսկ Միհրդատայ։ Վճարեալ էր վասն նորա՝ եթէ Սուղղայի, փոխանակ համբերելոյ ի գլուխ հանել զյաղթութիւնն՝ չէր աճապարեալ առնել խաղաղութիւն։ Տեսցուք, թէ զիա՛րդ եթող Սուղղա զԱսիա։ Կռեաց դաշինս ընդ արքային Պոնտոսի, որ դարձոյց զԲիւթանիա առ Նիկոմեդ և զԿապադովկիա առ Արիոբարզան, և այսպէս Ասիա եմուտ միւս անգամ ընդ մերով իշխանութեամբ, որպէս էրն յառաջ։ Այլ Միհրդատ չէր վանեալ, և չաջողութիւնք նորա զայրացուցին զնա մանաւանդ քան արկին ի վհատութիւն։ Հրապուրեալ յաղթութեամբքն յԱսիա և յԵւրոպ՝ ոչ օտար ինչ զգաւառսն զայնոսիկ համարէր, այլ իբրև ստացուած զոր կորոյս, կամ զոր այլք հանին ի նմանէ, և մարթ էր նմա առնուլ այսրէն պատերազմաւ։ Ձորօրինակ բոցք հրդեհի, որ չիցէ շիջեալ իսպառ, բորբոքին անդրէն սաստկագոյնս՝ այնպէս Միհրդատ նորոգեալ զիւր ջան՝ ևս բազմաձեռն գնդաւ խաղաց անդրէն ի վերայ Ասիացւոց, զայս նուագ իւրով բովանդակ զօրութեամբ, որով ծածկէր զծով և զցամաք և զգետս։ Կիզիկոն, քաղաք անուանի, բերդիւքն և պատուարօք, նաւահանգստիւն և աշտարակօքն ի մարմարիոնէ՝ է զարդ ասիական ծովեզերն, իբրև երկրորդ Հռոմ յԱսիա։ Միհրդատ դարձուցանէ զզէնս իւր ընդդէմ քաղաքին, այլ բնակիչքն քաջալերեցան լինել դիմակալ՝ իբրև պատգամաւորն որ եկն՝ ետ նոցա համբաւ, թէ մերձ էր Ղուկուղղոս։ Նստեալ ի տիկ, զոր

վարէր ոտիւքն՝ պատգամաւորն այսպիսի յանդուգն հնարիւք անցեալ էր ընդ մէջ նաւատորմղի թշնամւոյն, որ համարեցաւ զնա ի հեռուստ իբրև ճիւաղ իմն ծովական։ Իսկ և իսկ փոխէր բախտն. յերկարութենէ պաշարմանն եղև սով ի բանակի անդ Թագաւորին, և ի սովոյ անտի՝ սրածութիւն։ Միհրդատ տայր խոյս, և Ղուկուղղոս պնդէր զկնի, և առնէր ի զօրսն Միհրդատայ կոտորած այնպէս սաստիկ, մինչև Գրանիկն և Եսապ գետոց ներկանել յարիւն և յապաժոյժ։ Թագաւորն խորամանկ, որ գիտէր զՀռոմոցն զագահութիւն՝ հրաման տայր զօրուն ի փախչելն թողուլ ցիր և ցան զկարասին իւրեանց և զարծաթ, առ ի կասեցուցանելոյ զյաղթողն ի պնդելոյ զհետ։ Փախուստն Միհրդատայ ընդ ծով լինէր ոչինչ ընդհատ ձախող քան զփախուստն նորա ընդ ցամաք։ Տորմիղ նաւացն, որոց թիւն չէր պակաս քան զհարիւր, ահեղ կազմածովք պատերազմի՝ հանդիպէր մրրկի ի Պոնտոս ծովուն, և խորտակէր այնպէս չարաչար, մինչև բերել զնմանութիւն նշխարաց նաւուց խորտակելոց ի ծովային պատերազմի, իբր այն թէ Ղուկուղղեայ էր ի բանի արարեալ զալիս և զմրրիկ և զհողմս՝ հանել յանդ զպարտութիւն Թագաւորին։

Ամենայն զօրութիւն հզօր Թագաւորին էր սպառեալ, այլ աղէտքն յաւելուին զքաջութիւն նորա։ Դարձաւ յազգսն արուարձանեայս, և առնէր հաղորդ չաջողութեան իւրում զամենայն արևելս և զհիւսիսի։ Շահէր զՎիրս, զԿազբս, զԱղուանս և զՃայսն զերկոսեան։ Բախտն խնդրէր այսպէս ի կողմանց կողմանց պատճառս համբաւոյ, փառաց և յաղթութեան սիրելւոյ իւրում Պոմպէի, որոյ տեսեալ զԱսիա դղրդեալ և հրդեհեալ միւս անգամ, և այլոց թագաւորաց յաջորդեալ բազմութեամբ՝ գիտաց եթէ չէր արժան ի զուր ծախել ժամանակն. չթողացոյց այնչափ ազգաց զօրութեան գալ ի մի վայր։ Աճապարեալ անցանէր ընդ Եփրատ, գործեալ կամուրջս ի նաւաց, և հասանէր Թագաւորին ի փախստեան նորա, մինչ էր նա ի միջոցի անդ աշխարհին Հայոց, և, ով բախտաւորութեան առնն, ջախջախէր զնա անդարձ ի միում ճակատու միայն։ Կռիւն սկսանէր ի գիշերի, և լուսին լինէր պատերազմակից. արդարև որպէս թէ վասն մեր պատերազմէր։ Դէպ եղև ծագել նմա ի թիկանց թշնամւոյն և յառաջոյ Հռոմայեցւոց, մինչև զօրաց Թագաւորին, խաբեալ յանհնարին մեծութենէ ստուերաց իւրեանց՝ զնոսին զըստուերսն հարկանել, համարեալ թէ զթշնամիս իւրեանց հարկանիցեն։ Այսպէս Միհրդատայ կորուստն վճարէր ի նմին գիշերի, և այնուհետև և ոչ մի ջան ոչ յաջողեաց նմա, թէպէտ և զամենայն հնարս հնարեցաւ կանգնել զանձն, զորօրինակ օձ որոյ ջախջախեալ գլուխն իցէ՝ ի վախճանի տտամբն սպառնայ։ Այսպէս յետ անկա-

նելոյ ի Կողքիս՝ կամեցաւ յանկարծ երևելով արկանել ահ յեզերս Սկիւթացւոց մինչև ի մերն Կամպանիա։ Յուսայր յիւր կողմն ար֊կանել զամենայն երկիրն ի մէջ Կողքիսայ և Բոսպորայ, հատանել անցանել զԹրակիա, զՄակեդոնիա և զՅոյնս, և ապա մտանել յան֊կարծ յԻտալիա։ Խորհուրդ լոկ էր այս, քանզի առեալ զհամբաւ ապստամբութեան իւրոց հպատակացն և մատնութեանն Փառնակայ իւրոյ որդւոյ՝ սրով արար անձին, իբրև թոյնն չեղև նմա գամա֊գիր։ Սակայն զհետ մտանէր նմա Պոմպէոս մեծն շտապաւ ընդ բազում աշխարհս։ Յարևելից կուսէ եմուտ ի Հայս, կալաւ զԱրտա֊շատ, զնիստ Թագաւորաց երկրին այնորիկ, և եթող Տիգրանայ որ աղաչէրն՝ զթագն. ի հիւսիսոյ կողմանէ եմուտ յաշխարհն Սկիւթա֊ցւոց, յաստեղաց առաջնորդեալ որպէս ի ծովու. հնազանդեցոյց զԿողքիս, ներեաց Վրաց և խնայեաց Աղուանից։ Ի ճամբարէ անտի իւրմէ առ ստամբ Կովկասու՝ ստիպեաց զՈրոդ արքայ Աղուանից իջանել ի տափարակ, և զԱրթոկէս, որ հրամայէր Վրաց՝ տալ նմա զորդին իւր ի պատանդ։ Ետ վարձս Որոդայ, որ իւրովք կամօք առաքեալ էր նմա յԱղուանից մահիճս ոսկեղէնս և այլ ևս պատա֊րագս» (Են. Փլորոս. Գ. 6)։

7. Այս երկու պատմական հատուածք բաւական են լուսաւո֊րել Կիկերոնի պատմութիւնն, զոր իբրև ճարտարախօս մանաւանդ քան իբրև պատմագիր կը դնէ մեզ առաջի։ «Պատերազմ ծանր և վտանգալից դաշնաւորաց ձերոց և նիզակակցաց՝ ի վերայ հասեալ կայ յերկուց մեծազօր թագաւորաց, ի Միհրդատայ և ի Տիգրանայ։... Մերժեալ անկեալ է ի թագաւորութենէն Արիոբարզանէս արքայ, նիզակակից ժողովրդեանն Հռոմայեցւոց և բարեկամ. ի վերայ հա֊սեալ սպառնան համօրէն աշխարհին Ասիացւոց երկու թագաւորք, որ ոչ ընդ ձեզ միայն անհնարին թշնամութեամբ են, այլև ընդ նիզակակցաց ձերոց և ընդ բարեկամաց. և ամենայն իսկ քաղաքք, համօրէն Ասիա և Յունաց աշխարհ՝ հարկ համարին ձերում օգնա֊կանութեանն ունել ակն վասն մեծութեան տագնապին։... Պարտ և պատշաճ է ջնջել սրբել ձեզ զբիծն զայն, զոր ընկալարուք ի Միհրդատեան պատերազմին, որ յառաջ քան զայս էր. այն բիծ հաստատեցաւ իմն և հնացաւ ի վերայ անուան ժողովրդեանն Հռո֊մայեցւոց։ Քանզի նա, որ ի միում աւուր ընդ ամենայն Ասիա, յայնչափ քաղաքս, միով հրեշտակաւ և միով ակնարկութեամբ թղ֊թոյ հրամայեաց սպանանել և կոտորել արս քաղաքացիս Հռոմայ֊եցիս՝ ոչ միայն չեղոյծ ինչ տակաւին վրէժս արժանի ըստ խակու֊թեանն, այլ և թագաւորէ ևս ի ժամանակէ անտի հետէ ամս իբ֊րև քսան և երիս, և այնպէս իմն թագաւորէ, զի իբր ոչ եթէ

յորջս Պոնտացւոց և Կապադովկացւոց աշխարհին զօղել կամիցի, այլ ի հայրենի թագաւորութենէն ելանել ի դուրս և ի նահանգս ձեր, այսինքն ի լոյս Ասիայ շրջել։ Քանզի ցայժմ ձեր զօրավարք այնպէս իմն ետուն ընդ թագաւորին ընդ այնմիկ պատերազմ, զի զնշանս յաղթութեանն առին ի նմանէ և ոչ եթէ զյաղթութիւնն։ Կատարեաց ձաղանս յաղթութեան Սուղղա, կատարեաց և Մուրենա վասն Միհրդատայ, երկոքին արք զօրաւորք և զօրավարք մեծամեծք, բայց և այնպէս նա, թէպէտ վանեալ վկանդեալ՝ սակայն թագաւորէր։... Միհրդատ զժամանակն մնացեալ ոչ ի մոռացութիւն առաջին պատերազմին, այլ ի պատրաստութիւն նորոյ պատերազմի դարձոյց. յետ յօրինեալ կազմելոյ մեծամեծ տորմիղս նաւաց և զօր բազում, յորոց ազգաց միանգամ ժողովելն կարող էր՝ կարծեցուցանէր իմն, թէ ընդ Բոսպորացւոց իւրոցն արուարձանեայց կամիցի բախել ի մարտ պատերազմի. սակայն մինչև ցաշխարհն Սպանիացւոց յԵկբատանացւոց քաղաքէն առաքէր հրեշտակութիւն առ զօրավարսն՝ ընդ որոց էր մեզ յայնժամ մարտ պատերազմի. զի յորժամ յերկուս ի հեռաւոր և յայլ և յայլ տեղիս միով միաբան խորհրդով յերկուց բանակաց ընդ ծով և ընդ ցամաք պատերազմ ի վերայ կայցէ՝ դուք երկակողմանի կռուովն բաժանեալ պառակտիցիք, և կործանումն այնուհետև տէրութեանս հասանիցէ։... Թէպէտև ապրեցոյց Ղուկուղղոս զԿիւզիկոս քաղաք, զհաւատարիմն Հռոմայեցւոց, որ պաշարեալ էր ի թագաւորէն մեծաւ բազմութեամբ և սաստկութեամբ. զմեծ տորմիղ նաւացն սանձեաց, զորս սերտորեան զօրավարք յԻտալիա մղէին տագնապաւ, և բացաւ առաջի լեգէոնացն Հռոմայեցւոց Պոնտոս. Սինոպ և Ամիսոս, յորս ապարանք և գանձք թագաւորին էին, անկան ի բուռն՝ սակայն այնպէս իմն գնայր Միհրդատ փախստեայ ի թագաւորութենէն, որպէս ի նոյն աշխարհէն Պոնտոսի Մեդէայն այն կին երբեմն պատմի փախուցեալ. զի ասեն իմն, թէ ի փախչելն իւրում զանդամս եղբօր իւրոյ ցանեալ սփռէր ի տեղիսն, ընդ որս զհետ նորա մտեալ ընթանայր հայրն, որպէս զի ժողովելն զցրուեալսն և սուգն հայրենի առնիցէ յապաղումն երագութեանն։ Ըստ նմին օրինակի և Միհրդատ ի փախչելն իւրում թողոյր ի Պոնտոս բազմութիւն ոսկւոյ և արծաթոյ և գեղեցիկ գեղեցիկ իրաց, զորս և ի նախնեացն ունէր և ինքն ևս յառաջնում պատերազմին ի համօրէն Ասիայ կողոպտեալ տարաւ յերկիր թագաւորութեան իւրոյ։ Մինչդեռ մերքն ժողովեն զնոսա մեծաւ զգուշութեամբ՝ ինքն թագաւորն պրծեալ ելանէ ի ձեռաց։ Այսպէս զնա յապաղեցուցանէր տրտմութիւն, իսկ զսոսա, ի մտանելն զհետ՝ ուրախութիւնն։ Ընկալաւ զնա յերկւղի

անդ և ի փախստեան Տիգրան արքայ Հայոց, քաջալերեալ զօրացոյց զնա, յորժամ անկեալ էր նա ի յուսոյ, մխիթարեաց զնա ի տրտմութենէն և արծարծեալ կազդուրեցոյց զնա:... Իսկ զօրն մեր, թէպէտ և առեալ էր զքաղաք թագաւորութեանն Տիգրանայ և լցեալ բազում աւարաւ՝ սակայն բազում հեռաւորութեամբ վայրացն և անձկով ընտանեաց յուզեալ շարժէր:... Այլ Միհրդատ և զիւր գունդն ընդեալ հաստատէր և զայնոսիկ, որ ի թագաւորութենէ անտի նորա էին ժողովեալ, և գտանէր թիկունս օգնականութեան ի հարուստ մարզիկ զօրաց բազում թագաւորաց և ազգաց:... Նմին իրի ա՛յնչափ ի պարտութեանն կարաց վճարել՝ որչափ չիշխէր երբէք ըղձանալ՝ յորժամ անվնաս կայր: Քանզի իբրև չոքաւ նա ի թագաւորութիւն իւր՝ չհամարեցաւ զայն բաւական, որ արտաքոյ քան զյոյս դիպեալն էր նմա, այսինքն դառնալ երբէք յերկիր անդր յորմէ մերժեալն էր, այլև յարձակել ևս ի վերայ յաղթող և մեծապայծառ բանակաց ձերոց իշխեաց: Թոյլ տուք ինձ յայսմ վայրի, ո՛վ Հռոմայեցիք, զանց առնել զաղէտիւք մերովք, որպէս պուէտքն առնեն, յորժամ զիրս Հռոմայեցւոցն գրեցեն. քանզի այնչափ իսկ խիստ աղէտքն էին, զի ոչ եթէ պատգամաւոր ի պատերազմէ անտի հասուցանէր զգոյժն ի լսելիս Լուկուղղեայ, այլ համբաւ ինչ բանից»:

Զայսոսիկ առաջին Միհրդատեան պատերազմին համար. երկրորդ պատերազմին համար նոյն Կիկերոն կը գրէ այսպէս ի ճառին, զոր խօսեցաւ ի պաշտպանութիւն Մուրենայ. «Եթէ պատերազմն այն, եթէ թշնամին այն, եթէ թագաւորն այն դոյզն ինչ և արհամարհանաց էր՝ ոչ արդեօք այնչափ փութոյ և հոգոյ զիրսն համարէր ծերակոյտն և ժողովուրդն Հռոմայեցւոց, և ոչ յայնչափ ամս տևէր պատերազմն, և ոչ զկատարումն պատերազմին այնորիկ այնչափ մտադիւրութեամբ Պոմպէի առնէր յանձն ժողովուրդն Հռոմայեցւոց: Յամենայն պատերազմաց նորա (Մուրենայ), որ անթիւ իմն են՝ դժնդակ քան զամենայն այն պատերազմ թուի ինձ, որ ընդ թագաւորին տուաւ և մեծաւ սաստկութեամբ եղև կռուն: Եւ իբրև պրծեալ եւ նա ի պատերազմէ անտի և անկաւ ի Բոսպորոս, յոր չկարէր մերձենալ զօրն հռոմայեցի՝ նա և ի վերջին իսկ չաջողութեան և ի փախստի պահեալ ունէր զարքունական անունն: Նմին իրի և ինքն իսկ Պոմպէոս, յետ տիրելոյ թագաւորութեան նորա և մերժելոյ զթշնամին յամենայն սահմանաց և ի ծանօթ տեղեաց՝ այնչափ մեծ ինչ զնորա միայնոյ կենդանութիւնն համարեցաւ, զի յորժամ զամենայն առեալ էր, զոր նայն ունէր և յաղթութեամբ ստացեալ պահէր՝ սակայն և այնպէս

չհամարեցաւ ի գլուխ ելեալ զպատերազմն մինչև զնա յաղթել արկեալ։ Զայս թշնամի արհամարհես դու, ով Կատոն, ընդ որում զայնչափ ամս յայնչափ պատերազմունս այնչափ զօրավարք եղուն ճակատս, որոյ կեանքն և յետ վանելոյ նորա և մերժելոյ այնչափ մեծ համարեալ էր, զի յետ հասանելոյ աւետեաց մահու նորա, ապա ուրեմն վճարեալ զպատերազմն համարեցաք» (Թարգմ. Գաթրճեանի, Տիեզեր. պատմ. Հ. Ա. էջ 593, 594)։

Ի բանից աստի Կիկերոնի յայտնի կը տեսնուի, թէ Տիգրան էր օգնական Միհրդատայ, թէ Միհրդատ արքայ Պոնտոսի նուաճեց, հակառակ կամաց Հռոմայեցւոց՝ շատ տեղեր ի Փոքուն Ասիա, մանաւանդ զԲիւթանիա և զԿապադովկիա, որ էին ընդ պաշտպանութեամբ Հռոմայեցւոց, և ոչ սակաւ վնաս տուաւ նոցա, մինչև տալ կոտորել Հռոմայեցի քաղաքացիներէն շատեր, նուաճեց զՑոյնս (զՅելլադա). թէ երևելի զօրավարք Հռոմայեցւոց, որպէս Սուղղա, Մուրենա, Ղուկուղղոս, յաղթել յաղթեցին նմա, առին քաղաքաց նորա և մեծի մասին երկրին, չկրցան սակայն նուաճել զնա. թէ Բոսփորոս և Կողքիս, թերևս մինչև ի Մարս առ հիւսիւ՝ էին ընդ ձեռամբ Միհրդատայ. թէ Միհրդատ միացաւ հռոմայեցի զօրավարաց հետ, որ ապստամբած էին Հռոմայեցիներէն ի Սպանիա, և տուաւ մեծ անձկութիւն և երկիւղ Հռոմայեցւոց. թէ յետ պարտութեանն ի Ղուկուղղեայ՝ գտաւ դարձեալ Միհրդատ օգնութիւն ի Տիգրանայ, որ չառաւ յանձն տալ զՄիհրդատ, որ ապաւինած էր առ նա՝ ի ձեռս Հռոմայեցւոց, ուստի և բերաւ յիւր վերայ զՂուկուղղոս, որ առաւ զՏիգրանակերտ, թերևս նաև զԱրտաշատ, զքաղաք թագաւորութեան նորա. թէ հուսկ ուրեմն ղրկուեցաւ Հռոմայեցիներէն Պոմպէոս, որ վախճան տուաւ այս ծանր և գժուարին պատերազմին երկուց արգարև մեծազօր թագաւորաց դէմ, և թէպէտ Միհրդատ հազիւ փախստեամբ զերծաւ ի Բոսփորոս՝ չհամարեցաւ սակայն նուաճեալ, և ոչ պատերազմն այն վճարեալ, բայց միայն երբ առնուեցաւ նորա մահուան լուրն (աւետիքն ըստ Կիկերոնի)։

Ց. Ցոյն և հռոմայեցի պատմիչք պատերազմացն Միհրդատայ և Տիգրանայ, ինչպէս Պլուտարքոս, Ապպիանոս, Յուլիոս, Դիոն Կասսիոս և այլք՝ կը պատմեն այլ ևս բազում ինչ, բայց սոքա ամենքն ոչ միայն, որպէս ասացաւ, չեն ժամանակակից, այլև են բազում ուրեք հակառակք միմեանց։ Ճշմարիտն կամ գէթ հաւանականագոյնն այս է, թէ այս բազմամեայ պատերազմին մէջ յաղթութիւնը մնաց անորոշ։ Միոյ կողման նիւթական և միւսոյն բարոյական զօրութիւնն կը քռնէր զնոսա ի հաւասարակշռութեան։

Չայս կ'ակնարկէ ասելն Կիկերոնի, թէ զօրավարք Հռոմայեցւոց «զնշանս յաղթութեանն առին ի նմանէ, ոչ թէ զյաղթութիւնն»։ Նոյնպէս իմա զՏիգրանայ. մերթ կը բարձրացունեն զնա յոյն և Հռոմայեցի պատմիչք՝ մինչև տալ Ղուկուղղոսի ակնածել ի նմանէ և մերթ կուտան նմա անկանել յոտս Պոմպէի և զթագ իւր դնել ի գլուխ նորա։ Եթէ գոյ ճշմարտութիւն այսչափ հակառակ պատմութեանց մէջ՝ այս է, թէ Հռոմայեցիք—ինչպէս առ մեօք աշխարհակալ ազգեր, երբ չեն կարող յաղթել բարբարոս կամ կէս բարբարոս ազգերու, որ նիւթական զօրութեամբ կամ իրենց երկրին դրիւք ի վեր են քան զնոսա, կը դիմեն նենգաւոր հնարից՝—խորամանկութիւնն առին ի ձեռս, յորուցանելով զորդիս ընդդէմ հարց, ինչպէս զՓառնակ ընդդէմ Միհրդատայ և զկրտսերն Տիգրան զորդին՝ ընդդէմ Տիգրանայ։ Միհրդատ այս ներքին երկպառակութենէն մանաւանդ քան ի զինուց թշնամւոյն վհատեալ՝ կը թուի անձին արարեալ, կամ մանաւանդ սպանեալ գաւով, և Տիգրան ի մատնութենէ որդւոյն, որ կը կոչուի Տիգրան փոքր և էր թշնամութեամբ ընդ հօրն՝ ընկճեալ, յանձն առած կը թուի հրաժարել երկիրներէն, զորս ունէր արտաքոյ Հայաստանի, և շատանալ իւր հայրենի թագաւորութեամբ։ Այսպէս Հայք կը խաղաղին առ ժամն, և լինին բարեկամ և դաշնակից Հռոմայեցւոց, մինչև յարշաւանս Կրասոսի (54) և Անտոնեայ (36) ի վերայ Պարթևաց՝ կամաւ կամ ակամայ զօրօք օգնական և նիզակակից Հռոմայեցւոց լինէր Արտաւազդ, որ կը թուի վաղ իսկ, երբ յամէն 63, բարձակից լեալ հօրն առ կենդանութեամբ իսկ նորա, ինչպէս յայտնի է ի յիշելոյն Կիկերոնի զԱրտաւազդ իբր թագաւոր Հայոց յամին 63, մինչ էր նա (Կիկերոն) պրետոր ի Կիլիկիա։ Կիկերոն Մուրեննեան ճառին մէջ կը թուի խոստովանել, թէ Պոմպէոս ոչ այնչափ զինու զօրութեամբ վերջ տուաւ պատերազմին Միհրդատայ՝ որչափ տալով սպանանել զնա։ «Յորժամ, ասէ, Պոմպէոս զամենայն առեալ էր զոր նայն ունէր և յաղթութեամբ ստացեալ պահէր՝ սակայն և այնպէս չհամարեցաւ ի գլուխ հանեալ զպատերազմն, մինչչև զնա յարևէ արկեալ»։

9. Տեսանք համառօտիւ Հայոց յարաբերութիւնն ընդ Հռոմայեցւոց յԱրտաքսիասայ մինչև ի Տիգրան։ Պանք այժմ տեսնել նաև զյարաբերութիւն մեր ընդ Պարթևաց նոյն միջոցին մէջ։ Յայտնի է մեր պատմութենէն, թէ Պարթևք ունեցան ներքին և սերտ յարաբերութիւն ընդ Հայոց։ Մինչև 190 նախ քան զՔր., այն է առ առաջին պարթև թագաւորօք՝ Պարթևք չէին կրնար ունենալ գործ ուղղակի ընդ Հայոց, քանզի Հայաստան մինչև ցայնժամ չէր առանձին թագաւորութիւն, այլ էր նահանգ Սելևկեանց

և կը կառավարուէր այս վերջիններուն կողմանէ կուսակալօք. յետ իբր 190-ին նախ քան զՔր. կ'սկսին Հայք Արտաքսիասիւ լինել անկախ տէրութիւն, ուստի այն թուականէն հետէ պարտ է խնդրել Պարթևաց աղերսն ընդ Հայոց։ Թէպէտ չունինք առ այս ստոյգ պատմական տեղեկութիւն ժամանակակից աղբիւրներէ վասն ժամանակի յառաջ քան զՏիգրան մեծ՝ ի բանից Ստրաբոնի սակայն զնմին Տիգրանայ—թէ էր նա պատանդ առ Պարթևս և թէ յետ մահու հօրն տալով նոցա Հայոց երկիրներէն մեծ մաս մի առաւ իւր հարց թագաւորութիւնը, և ապա հանեց զվրէժն, ոչ միայն առնլով յետս ինչ որ տուած էր, այլև հանելով ի նոցանէ ոչ սակաւ գաւառներ՝—կը տեսնուի ըստ բաւականին, թէ յառաջ քան զթագաւորութիւնն մեծին Տիգրանայ, Հայոց յարաբերութիւնն ընդ Պարթևաց չէր բարեկամական, այլ, գէթ Տիգրանայ հաւուն կամ հօրը ժամանակ՝ կար այս երկու ազգաց մէջ ոսոխութիւն կամ գէթ մրցումն վասն նախաւորութեան ի յառաջակողման Ասիոյ։ Յուստինոս, Բ. դարու Հռոմայեցի պատմիչ, որ ծաղկեցաւ առ Անտոնեամբք և որմէ ունինք Տրոգոս Պոմպէոսի Հռոմայեցի պատմիչին ընդհանուր պատմութեան համառօտութիւնն ի 44 գիրս՝ կը պատմէ զՄիհրդատայ Բ-է (Արշակ Թ, 114—86 ն. ք. զՔր.), թէ «կռուեցաւ ընդ Որդուազիստայ (Արտաւազդայ) արքային Հայոց» (Յուստ. գիրք ԽԲ. Բ.)։ Այս Արտաւազդ, նայելով ժամանակին (114—86 ն. ք. զՔր.)՝ կը թուի լինել նախորդ Տիգրանայ մեծին, թերևս հայր կամ մանաւանդ հօրեղբայր։ Այս պատերազմն ի մէջ Միհրդատայ Բ. արքայի Պարթևաց և Արտաւազդայ ուրումն արքայի Հայոց է առաջին պատերազմն Պարթևաց ընդ Հայոց, յիշեալ ի պատմութեան։ Թերևս այս պատերազմին արդիւնքն էր այն, զոր կը պատմէ Ստրաբոն և զոր յիշեցաք ի վերոյ, այսինքն թէ Տիգրան տրուեցաւ պատանդ Պարթևաց, և թէ ի մահուան հօրն տալով երկիրներ՝ առաւ հայրենի թագաւորութիւնը, թէպէտ յետոյ հանեց վրէժը։ Տիգրանայ և Միհրդատայ մեծի պատերազմներուն ժամանակ ընդ Հռոմայեցիս, կ'երևի թէ Պարթևք չիշխեցին խլրտել, թերևս առ ակնածելոյ ի զօրութենէն Տիգրանայ, կամ առ տկարութեան, քանզի յետ մահուն Միհրդատայ Բ. Պարթևաց տէրութիւնը գձձեցաւ ներքին խռովութիւններէ։ Սակայն յետ վերջին պարտութեանն Տիգրանայ և դաշանցն ընդ Պոմպէոսի՝ Հրահատ Գ. (Արշակ ԺԲ, 68—58) մտաւ Հայաստան, բայց ստիպուեցաւ թողուլ փութով առ ահին Պոմպէի, որ Պարթևները նուաճելու դիտմամբ յառաջացած էր մինչև յափունս Տիգրիսի. յաղթող հռոմայեցին եկաց դատաւոր և որոշեց երկու տէրութեանց սահմանները։

**10.** Դիոն Կասսիոս կուտայ մեզ այս պատմութիւնն, ուր կը տեսնենք ոչ միայն Հայոց յարաբերութիւնն ընդ Պարթևաց առ Տիգրանաւ, այլև մեծին Տիգրանայ որդոյն, մանկանն Տիգրանայ թշնամութիւնն իւր հօրը դէմ և վախճանը միջամտութեամբ Պոմպէի, ինչպէս նաև նորին իսկ Տիգրանայ Պոմպէի հետ կռուոյն վախճանը։ Դիոն չէ ժամանակակից, այլ իբր երկերիւր ամօք յետոյ քան զՏիգրան, բայց պատմութիւնն նորա ունի մեծ յարգ, և Դիոն է արդարև հռչակաւոր անուանի պատմագրաց Յունաց և Հռոմայեցւոց. այլուստ դարձեալ հարիւր յիսուն կամ երկերիւր ամաց հեռաւորութիւնն չէ մեծ ինչ Դիոնի համար, որ իբրև անդամ ծերակուտի և հիւպատոս (229) ապա կուսակալ ի Փոքրն Ասիա և յԱփրիկէ առ Սևերոսն Աղեքսանդրիւ (222 – 235), քաղած է իւր պատմութիւնն պաշտօնական աղբիւրներէ։ Տեսնենք նախ՝ ինչ որ կը պատմէ Դիոն զմանկանէն Տիգրանայ, ընդ որում համամիտ, ըստ մասին նաև օգնական, նմ անէր իսկ էր Հրահատ Գ։

«Տիգրան փոքր (որդի մեծին Տիգրանայ), կացեալ գլուխ արանց ոմանց աւագաց, որ չէին հաճ ընդ իշխանութիւն հօր սորա՝ չոգաւ առ Հրահատ, և զի սա վարանէր իմն, թէ զինչ առնել պարտ էր վասն դաշանցն ընդ Պոմպէի՝ Տիգրան հաւանեցոյց զնա խաղալ ի վերայ Հայոց։ Գային հասանէին մինչև յԱրտաշատ, հնազանդեցուցեալ զամենայն ընդ որս անցանէին, յարձակէին իսկ ի վերայ քաղաքին։ Տիգրան հայրն զահի հարեալ ի մերձենալ նոցա՝ խոյս տայր ի լերինս։ Սակայն Հրահատայ զմտաւ ածեալ, եթէ պաշարումն Արտաշատու մարթէր յերկարել՝ թողոյր ի ձեռս Տիգրանայ մանկան մասն մի ի զօրացն և դառնայր յերկիր իւր։ Տիգրան հայրն գայր յայնժամ ի վերայ որդւոյն, որ մնացեալ էր առանձինն, և յաղթէր նմա, որ փախուցեալ դէմ եդ առ հաւն իւր (Միհրդատ Եւպատոր). բայց իմացեալ եթէ Միհրդատ ևս, մատնեալ ի պարտութիւն, ունէր մանաւանդ պէտս օգնութեան քան զօրութիւն օգնելոյ այլոց՝ լինէր ի Հռոմայեցիս անդր ապաստան և առաջնորդէր Պոմպէի յարշաւանի նորա ի Հայս ընդդէմ հօրն»։ Պոմպէոս դեռ եկած չէր Տիգրանայ վրայ, այլ էր հետամուտ Միհրդատայ, որ յուսահատ Տիգրանայ ձեռնտուութենէն՝ հիւսիսային կողմերը կը խնդրէր օգնութիւն։ «Իբրև զգաստ լինէր այս (գալուստն Պոմպէի) Տիգրանայ՝ երկուցեալ նորա առաքէր պատգամ առ Պոմպէոս և տայր ի ձեռս նորա զհրեշտակսն Միհրդատայ. այլ հակառակ խորհրդոյ որդւոյն՝ լինէր արգել հօրն ընդունելոյ պայմանս հաշտութեան։ Մինչ այս մինչ այն՝ Պոմպէոս (որ գայր ի կողմանց հիւսիսոյ)՝ անցեալ ընդ Երասխ հասանէր մինչև առ պարսպօքն Ար-

տաշատու, Թէպէտ և Տիգրան ի նեղ մտեալ Թողոյր զքաղաքն եր-Թալ ի բանակ անդր նորա, և առ ածելոյ զնա և՛ յակնածութիւն և՛ ի գութ՝ ջանայր յարտաքին կերպարանս իւր չտալ նշմարել ո՛չ զառաջին մեծութիւն իւր և ոչ զայնր ժամանակի խոնարհու-Թիւնն։ Այսպ մերկանայր զպատմուճանն արքունի սպիտակ ժապա-ւինօք և զտառատոկն համակ ի ծիրանւոյ, այլ դնէր զխոյրն, և զա-պարօշն ածէր զնովաւ։ Պոմպէոս առաքէր ընդ առաջ նորա նուի-րակ մի՝ ազդ առնել նմա իջանել յերիվարէն. քանզի Տիգրան ըստ սովորութեան իւրոց աշխարհին, կամէր մտանել ի նիւս երիվարի ի ճամբար անդր Հռոմայեցւոց։ Իբրև եմուտ նա անդր հետիոտս՝ հանեալ զԹագն ի գլխոյն խոնարհեցաւ, երկիր եպագ Պոմպէի։ Խանդաղատեալ զօրավարին ընդ տեսիլն՝ աճապարեաց ընդ առաջ նորա, կանգնեաց զնա, ած զապարօշն արքունի զգլխովն, նստոյց զնա առ իւր և մխիԹարէր զնա ասելով, Թող զայլ բանսն՝ Թէ չէր նորա կորուսեալ զԹագաւորութիւնն Հայոց, այլ շահեալ զբարե-կամութիւնն Հռոմայեցւոց։ Ցետ քաջալերելոյ զնա այսպէս՝ հրա-ւիրէր զնա յընԹրիս։ Որդին Տիգրանայ, որ նստէր ի ձախմէ Պոմ-պէի՝ ոչ եկաց յոտն առաջի հօրն, և ոչ մի ինչ նշանակ սիրոյ ցուցանէր նմա. նա և ոչ ի ճաշն յոր հրաւիրեալ էր՝ կամեցաւ գալ, և այս իսկ մանաւանդ ած ի վերայ նորա զցասումն Պոմպէի։ Ի վաղիւ անդր յետ լսելոյ զհայրն և զորդին՝ զօրավարն Հռոմայ-եցի եԹող Տիգրանայ զտէրութիւնն, զոր ունէր նա ի հարց անտի. իսկ զգաւառսն, որոց տիրեալ էր նա, այն է, Թող զայլ երկիրս՝ զբազում մարզս Գամրաց և Ասորւոց, զՓիւնիկէ, զԾոփս, երկիր սահմանակից Հայոց, յորոց ամենեցուն կազմեալ կայր աշխարհ մեծ և ընդարձակ՝ հանէր ի նմանէ, նա՛ պահանջէր ևս հարկս արծա-Թոյ. իսկ որդւոյ նորա տայր զԾոփս միայն, ուր էին գանձք Թա-գաւորաց Հայոց։ Մանուկն Տիգրան խնդրէր զգանձսն Թախանձա-նօք, և ոչ կարացեալ առնուլ (զի այլ ուստեք չէր հնար Պոմպէի տալ հատուցանել զարծաԹն խոստացեալ), գչարեալ դնէր ի մտի փախչել։ Այլ Պոմպէի իմացեալ զխորհուրդն՝ զգուշանայր նմա, և յղէր հրաման առ պահապանս գանձուցն՝ տալ զնոսա Տիգրանայ հօր։ Իբրև արքն չառնուին յանձն տալ առանց հրամանի ման-կանն Տիգրանայ, զոր համարէին տէր երկրին՝ Պոմպէոս առաքէր զնա ինքն ի բերդ անդր, ուր եդեալ էր զգանձսն, և նորա գտեալ զբերդն փակեալ՝ երԹայր հուպ և ակամայ իմն հրամայէր բանալ զդրունսն։ Պահապանքն չանսային նմա ևս, ասէին, եԹէ ոչ տայ նա զհրամանն կամաւ, այլ բռնի։ Զայրացեալ Պոմպէի՝ ետ դնել զմանուկն Տիգրան ի բանտի, և այսպէս գանձքն յանձնեցան հօր

նորա։ Պոմպէոս բաժանէր ապա յերիս գունդս զզօրսն, և հաստատէր ձմերոց յԱնահտական գաւառին և առ եզերբ Կուր գետոյ, յետ ընդունելոյ ի Տիգրանայ հօրէն պարգևս բազումս և արծաթ առաւել յոյժ քան զսակ պայմանին։ Այս մանաւանդ յօժարեցոյց զզօրավարն յետ սակաւ միոյ գրել զՏիգրան ի համարի բարեկամաց և դաշնաւորաց հռոմէական ժողովրդեան և առաքել զորդի նորա ի Հռոմ պահապանօք» (Դիոն. ԼԶ. 49—51).

Դիոն յետ պատմելոյ յաջորդ դպրութեան մէջ զարշաւանս Պոմպէի Վրաց և Աղուանից դէմ կուգայ պատմել հակառակութիւնը, որ կար ի մէջ Տիգրանայ և Հրահատայ, և թէ ինչպէս վերցաւ այս վէճն առանց պատերազմի, միջնորդութեամբ Պոմպէի։ «Յետ այսպիսի արութեանց (ի Վիրս և յԱղուանս)՝ Պոմպէոս շրջեցաւ ընդ երկիրն և շնորհեաց խաղաղութիւն Աղուանից և այլոց ցեղից բնակելոց առ Կովկասու մինչև ի ծովն Կասպից, ուր յանգի լեառնն այն սկիզբն առեալ ի Պոնտոսէ։ Հրահատ, որ կամէր նորոգել զդաշինսն ընդ Հռոմայեցիս՝ տեսեալ զխաղաղել Պոմպէի յառաջ այնպէս արագ, զմնացեալ մասն Հայոց և զմասն Պոնտոսի, որ առընթեր կայ նմա, նուաճեալս ի ձեռն տեղակալաց զօրավարին, և զԳաբինիոս հասեալ յայնկոյս Եփրատայ մինչև ի Տիգրիս՝ զահի հարեալ աճապարէր պնդել զդաշինսն ընդ Պոմպէի, այլ ոչինչ կարաց վճարել։ Պոմպէոս ապաստան ի յաջողութիւնսն, որ եղենն և որոց ունէր ակն առ յապայ՝ արհամարհեաց զնա. խօսեցաւ գոռոզութեամբ ընդ հրեշտակսն և խնդրէր ի Հրահատայ տալ նմա զԿորդուս, որոյ վասն հակառակութիւն էր նորա ընդ Տիգրանայ։ Եւ զի հրեշտակքն չիշխէին տալ նմա պատասխանի, քանզի չունէին հրահանգս ի թագաւորէն՝ Պոմպէոս գրէր առ Հրահատ, և առանց սպասելոյ պատասխանւոյ՝ առաքէր ի Կորդուս զԱփրանիոս, որ կալաւ զերկիրն առանց կռուոյ և տայր Տիգրանայ։... Պոմպէոս զայս օրինակ գնայր ընդ Հրահատայ, ամբարտաւանեալ ընդ զօրութիւն իւր, յայտ արարեալ որոց ցանկանն աշխարհակալութեան՝ եթէ ամենայն ինչ կախեալ կայ զզինուց և թէ նա, որում տան զէնք զյաղթութիւն՝ է տէր ամենայնի։ Նա և ծաղրէր իսկ զանուն յորջորջանացն, զոր տայր անձին Հրահատ առ այլ ազգս և առ Հռոմայեցիս իսկ, որք կոչէին զնա արքայից արքայ. այլ Պոմպէոս ի թուղթսն կոչէր զնա առանց յաւելուածոյ՝ արքայ, թէպէտ և տուեալ էր նա զանունն արքայից արքայ՝ Տիգրանայ, յորժամ կատարէր զձաղանսն ի Հռոմ յետ պարտութեան նորա։ Հրահատ երկնչէր ի Պոմպէէ և խնդրէր անել զնա զիւրև, զայրանայր սակայն զի մերկացոյց զնա Պոմպէոս ի յորջորջանաց անուանէն, որ-

պէս թէ ի թագաւորութենէն մերկանալր զնա։ Առաքեաց առ նա պատգամաւոր՝ տրտունջ լինել զըրկանացն զոր կրեաց, և արգելուլ նմա անցանել ըստ Եփրատ։ Իբրև Պոմպէոս ոչինչ մեղմանայր ի պատասխանիսն՝ Հրահատ ի սկզբան անդ գարնայնոյն ել ի պատերազմ ընդդէմ Տիգրանայ հանդերձ փեսայիւն իւրով, որ էր որդի Տիգրանայ։ Ի ճակատու ուրեք պարտեալ՝ ապա լինէր յաղթող։ Իբրև Տիգրան կոչէր յօգնութիւն զՊոմպէոս, որ էր յայնժամ յԱսորիս՝ Հրահատ առաքէր դարձեալ պատգամաւորս առ զօրավարն Հռոմայեցի, տրտունջ լինէր զՏիգրանայ և ասացեալ, եթէ զՀռոմայեցւոց ևս ունէր բազում պատճառս տրտնջելոյ՝ ամաչեցոյց և երկեցոյց զՊոմպէոս։ Զօրավարն Հռոմայեցի ի բաց կայր յօգնելոյ Տիգրանայ և ոչ թշնամութիւն ինչ ցուցանէր Հրահատայ, պատճառեալ եթէ չէր նմա յանձն արշաւել ի վերայ Պարթևաց, և զի Միհրդատ կայր տակաւին զէն ի ձեռին։ Ասէր ստէպ, եթէ շատ և բաւական համարէր զոր արարն, և թէ չէին նորա կամք, ցանկալով առնել աւելի ինչ՝ արկանել ընդ վտանգիւ զյաջողութիւնսն որպէս Ղուկուղղոսն։ Առեալ իմաստնոյ բանս՝ ասէր, եթէ ցանկութիւն անդադարն տիրելոյ է վնասակար, որպէս և ակն դնել յայլոց ինչս է անիրաւ. այլ խօսէր նա այսպէս՝ զի առնել աւելի ինչ չէր ձեռնհաս։ Երկուցեալ ի զօրութենէ արքային Պարթևաց և յանհաստատութենէ բախտին՝ չետ այլ ևս պատերազմ, թէպէտ և բազումք յորդորէին իմն զնա յայն։ Ունայնացոյց զամբաստանութիւնսն Հրահատայ, և առանց աշխատ լինելոյ ջրել զնոսա՝ ետ պատասխանի, եթէ որովհետև վէճն Հրահատայ և Տիգրանայ էր զսահմանաց ինչ՝ կարգէր զերիս ոմանս դատաւոր համոզել զնոսա, և արդարև իսկ առաքէր զարսն։ Տիգրան և Հրահատ ընկալան զնոսա իբրև իրաւարար, և ետուն վախճան գժտութեանն. առաջինն՝ վասն զի զչարեալ իմն էր, զի չընկալաւ օգնութիւն, և երկրորդն՝ քանզի կամէր եթէ թագաւորն Հայոց ունիցի ինչ զօրութիւն, զի թերևս դէպ լիցի նմա ունել պէտս ձեռնտուութեան նորա ընդդէմ Հռոմայեցւոց։ Երկոքին ևս քաջ գիտէին, զի որ ոք յերկոցունց անտի ջախջախիցէ զընկերն՝ հորդեսցէ ճանապարհ Հռոմայեցւոց կատարել՝ զոր ի մտին եդեալ էր նոցա» (Դիոն Լէ. 5 – 7)։

**11.** Օտար պատմիչներէն ոմանք որ չեն ժամանակակից՝ կը նկարագրեն զՏիգրան իբրև անհնարին անգութ և բռնաւոր, որպէս թէ իւր որդւոց երեքը տուաւ սպաննանել այլևայլ պատճառներով, և թագաւորներ զորս բռնած էր՝ կը ծառայեցունէր իբրև գերի։ Այսպիսի պատմութիւնք այնպիսի ժամանակ և այնպիսի թագաւորէ, եթէ իցեն ևս ճշմարիտ՝ չեն զարմանալի, մինչ զՀռոմայեցի

կայսերաց, և այն գլուագունից, որպիսի կը հռչակուին Կոստանդիանոս և Թէոդոս մեծ՝ այնպիսի գործեր կը պատմուին և են ստոյգ։ Բայց Տիգրան, նկատելով ահեղ մեծութիւնն յոր հասաւ նա՞ չէր անմասն մեծանձնութենէ, ինչպէս յայտնի է յառնելը նորա երեսս աղաչանաց Աղեքսանդրայ թագուհւոյն Հրէից և ի քաղցրութենէն, որով պատասխանեց պատգամաւորին Լուկուղղեայ, որ խստիւ կը պահանջէր տալ ի ձեռս զՄիհրդատ։ Զիարդ և իցէ՝ սա ճշմարիտ է, թէ Տիգրան եղաւ արդարև մեծ ի թագաւորս իւրոյ ժամանակին, արար զՀայս, թէպէտ կարճ ժամանակ՝ աշխարհակալ, և յիրաւի արժանի էր կոչուիլ ի Կիկերոնէ «Մեծազօր թագաւոր»։

**12.** Ի լրումն Տիգրանայ պատմութեան, որ մեր ազգային պատմութեան գրեթէ մի միայն կարևոր մասն է՝ հարկ կը համարինք արդի գիտնոյ մը (Théodore Reinach) Միհրդատ Եւպատոր անուն գործէն բերել երկայն հատուած մի, ուր հմուտ հեղինակն, յետ դնելոյ համառօտիւ Հայաստանի պատմութիւնն ի մահուանէն Աղեքսանդրի, այն է յանկանելոյ Հայոց ընդ իշխանութեամբ Սելևկեանց, մինչ ի Տիգրան մեծ՝ կը խօսի մանր այս վերջնոյն վրայ։ Այս քաղուածէն, ինչպէս կարծենք՝ պիտի տեսնուի, թէ Տիգրանայ պատմութիւնն է իբրև բովանդակութիւն, համառօտ պատկեր (panorama) ողջոյն Հայոց պատմութեան։ Արարատեան ազգին, իմա հին Հայոց (ըստ Խորենացւոյն Հայկազանց) պատմութիւնն յառաջ քան զԱղեքսանդր, գրեթէ անծանօթ մեզ, կամ գէթ մութ՝ յետ Աղեքսանդրի առ Սելևկեամբք կ'սկսի տակաւ լուսաւորուիլ մինչև Տիգրան, առ որով կ'առնուն իբր թէ գոյութիւն Հայք և՛ իբրև երկիր և՛ իբրև ազգ։ Հին հայ-պարսկական մարմնոյ մը վրայ, յոր փոխուած էր հին հայ մարմինը՝ կու գայ հելլենական գոյն, որ կուտայ իւր հզօր ազդեցութիւնը դարերով կրօնից, ոչ հեթանոսականներն միայն, այլ և քրիստոնէականներն, լեզուին և դպրութեան, որոց զհետ եկած է ուրոյն նկարագիր ընկերական և բարոյական, ցարդ ոչ անզգալի։ Ցիրաւի է կոչել մեծին Տիգրանայ ժամանակն, աննման փառաւորութեան հետ, թէպէտ կարճ՝ հայ ազգի մը անձնաւորութեան ժամանակ, այնպէս որ, ըստ մեզ, ի Տիգրանայ և այսր պարտ է խնդրել հայ ազգ․ ի Տիգրանայ և անդր Հայը աղմն է անկերպարան․ առ Տիգրանաւ կը ծնանի, կը հասնի ի չափ, կը ծերանայ միանգամայն։ Զարմանալի՜ երևոյթ։ Բայց ըստ մեզ՝ այն է մանաւանդ զարմանալի, որ մեր տոհմային աւանդութիւնն այս անձին ժամանակէն և պատմութենէն, բաց ի չոր համառօտութենէ՝ ոչ այլ ինչ պահած է, բայց ՄԵԾ անունը։ Ինչ որ

եղանք և ենք՝ եղանք և ենք Տիգրանաւ։ Ահա մեր քաղուածն հին լեզուաւ, վասն դիւրութեան և վայելչութեան։

«Ի վերջին բաժանման տէրութեանն Աղեքսանդրի, սատրապութիւնն Հայոց անկաւ ի բաժնին Սելևկեայ (Ապպիան. Ասոր. 55). այլ իշխանութիւնն Սելևկեանց չկարաց ունել հաստատութեամբ արմատ յերկրի անդ, որ էր լեռնային և ուր պարսկական բարք արձակեալ էին արմատ խորագոյնս քան ի Կապադովկիա։ Յընթացս դարուն երրորդի (Ն. ք. գՔր.) է տեսանել յարուցեալ ի Հայս իշխանս ի բնակաց երկրին կամ ի սատրապաց ապստամբելոց, որ սկիզբն առնէին տիրել միահեծան։ Սելևկեանք գնային ընդ իշխանսն ընդ այնոսիկ փոքունս մերթ քաղցրութեամբ և մերթ խըստիւ, ըստ չափոյ զօրութեան կամ տկարութեան նոցա. բայց ի յաղթել իսկ իւրեանց՝ շատ և բաւական համարէին ի վարձ յաղթութեանն՝ հպատակութիւն գոնեայ արտաքուստ։ Այսպէս յիշատակին ի պատմութեան Արդոատէս (Արտաւազդ) յամին 301, (Դիոդ. Հատտ. ԼԱ. 19, 5), Արշամ, դէպ յամն 240, (Պողիէն. Դ. 17, մատենագիր յոյն Բ. դարու), Քսերքսէս, դէպ յամն 215 (Պողիբ. Հատտ. Ը. 25)։ Այլ ոմն թագաւոր հայ գոյ յիշատակեալ յամին իբր 260 ի Մեմնոնէ (Պատմիչ յոյն մօտ ի Բ. դար)։

Պարտութիւնն Անտիոքոսի մեծի առ Մագնեսեաւ (190) եղև վասն համօրէն աշխարհին Հայոց նշան կատարեալ ազատութեան։ Երկոքին կուսակալք թագաւորին յաշխարհին յայնմիկ, Արտաքսիաս և Զարիադրէս, երկոքին ևս ազնուականք իրանեանք, որպէս թուի՝ հռչակեցին զանձինս միահեծան, իւրաքանչիւր յիւրում իշխանութեան և առին զանուն թագաւորի հաճութեամբ և պաշտպանութեամբ հռոմէական ծերակուտին։ Այսպէս հաստատեցան երկու հայ թագաւորութիւնք, որ տևեալ բաւեցին զողջոյն դարն Բ. նախ ք. գՔր., ի հիւսիսոյ արևելից՝ Մեծ Հայք ի հովտին Երասխայ, ուր ի դիպան վայրի կայր Արտաշատ մայրաքաղաք, շինեալ, որպէս ասեն՝ յԱննիբաղայ. իսկ ի հարաւոյ արևմտից՝ Ծոփք, որոյ քաղաք թագաւորութեանն Կարկաթիոկերտ՝ շինեալ էր ի վերայ բարձրաւանդակի, որ հայի ի դաշտ անդր Դկղադ գետոյ (Ստր. ԺԱ. 14, 15)։

Երկոքին տէրութիւնք, թէպէտև կրեցին հակառակութիւն յԱսորւոց առ Եպիփանն Անտիոքաւ (Դիոդ. Սիկ.)՝ կալան պինդ զազատութիւն իւրեանց, առին գաւառս շուրջանակի յամենայն կողմանց, և կալեցան իսկ ժամանակս ինչ զօդիւ նիզակակցութեան ընդ Փոքուն Հայոց։ Այլ ընդ հուպ Մեծ Հայք, թագաւորութիւնն Արտաքսիասայ, եղև քան զերկոսին (զԾոփս և զՓոքր Հայս) յառաջադէմ. և անձուկ աշխարհակալութեան նորա ստիպեաց զնոսա

խնդրել պաշտպանութիւն յօտարաց։ Յայտնի է, թէ զխորդ Փոքր Հայք յարեցան սերտիւ ի Պոնտոս առ Փառնակաւ և ընկղմեցան ի նա յառաջին ամս թագաւորութեանն Միհրդատայ Եւպատորի։ Նոյնպէս Ծոփք նուաճէին անդստին ի կիսոյ Բ. դարուն ն. ք. գՔր.՝ եթէ չէր գտեալ նոցա առ Արիաթարայ Ե-ի նեցուկ հզօր առանց անձին շահու (Դիոդ. Հտկտ. ԼԱ. 22, Պօղիբ. Հտկտ. ԼԱ. 15, Ա.)։ Ի վարձ պաշտպանութեան իւրոյ՝ Կապադովկիա յիւր վտարեաց միայն զգլուխ կամրջոյն Տոմիսայ, որոյ դիրն էր կարևոր ըստ զինուորութեան և դիպող կայան կարաւանաց, որ երթևեկէին ընդ Սղիւս և ընդ Տիգրիս (Ստր. ԺԲ. 2. 1, և ԺԴ. 2. 29)։ Ի վախճանի դարուն Բ-ի յառաջադէմն խաղացք Մեծին Հայոց արգելաւ ի Պարթևաց, որ առին զՄարս և զՄիջագետս ի Սելևկեանց անտի վատթարելոց։ Արշակ Թ, (Միհրդատ Բ, 114—86) ետ պատերազմ ընդ Հայս, յաղթեաց թագաւորի նոցա Արտաւազդայ (Յուստ. ԽԲ. 2. 16), և էառ պատանդ զՏիգրան, իշխան թագաւորազն (Յուստ. ԼԸ. 3, Ստր. ԺԱ. 14, 15)։ Ապպիանոս կոչէ զՏիգրան՝ որդի Տիգրանայ (Ասոր. 48). չէր նա թերևս որդի Արտաւազդայ, այլ որպէս հաւանութեան է՝ եղբօրորդի նորա։ Աւելորդ է զկայ առնուլ առ կարծեցեալ աւանդութեան Հայոց (Խոր. Բ. 3, Յովհ. կաթ. Ը. 9), որպէս թէ Պարթևք կացուցեալ էին ի Հայս զոմն Վաղարշակ, շառաւիղ կրտսեր յիւրեանց տոհմէ։ Յետ մահու Արտաւազդայ Միհրդատ չէառ յանձն տալ Տիգրանայ զազատութիւն և զաթոռ հօրցն իւրոց՝ բայց տալով նմա թողուլ դաշամբ 70 գաւառս կամ «հովիտս» ի Հայոց (95 ն. ք. գՔր.)։ Ամ թագաւորելոյն Տիգրանայ յայտնի է անտի, զի յամին 70, յորժամ Ապպիոս Կղաւդիոս եկն դեսպանութեամբ ի Ղուկուղղոսէ առ Տիգրան՝ էր սա թագաւոր ի 25 ամաց հետէ (Պլուտ. Ղուկ. 21)։ «Հայն խոնարհեալ, այլ ոչ նուաճեալ» (Ստր. ԺԶ. 1. 19) վկայէ յայտնապէս, թէ Պարթևք ոչ նուաճեցին երբէք զՀայս. և այլուր (ԺԱ. 14. 15) ասէ, թէ Տիգրան էր ի զաւակէ Արտաքսիասայ, ետես այնուհետև շուրջ զիւրև մանր մանր թագաւորութիւնս, որ էին իւրաքանչիւր ընդ վերին իշխանութեամբ Պարթևաց, որպէս Ուռհայաստան, Կորդուք, Ադիաբեն, Մարք Ատրպատականի, որ արգել մեծ էին ընդարձակելոյ նորա։

Այրն, որ կրէր զթագ արքայութեանն Հայոց յայնպիսում դըժուարին ժամանակի—(կապեաց նա թագ անդ՝ ուր շինեաց յետոյ զՏիգրանակերտ—Ապպիան. Միհր. 67)—էր ամօք ինչ երէց քան զՄիհրդատ Եւպատոր, այսինքն ծնեալ իբրև յամին 140 ն. ք. գՔր.։ Թէպէտ չկարէր նա գալ ի կշիռ համեմատութեան ընդ դրա-

ցուոյն իւրում ո՛չ հանճարով և ոչ բուսով բարուցն՝ ունէր ընդ նմա զոյգ հաւասար եռանդն սաստիկ մեծանալոյ, որ վաղ մերձեցուցանելոց էր զերկոսին թագաւորսն։ Այն ինչ ելեալ ի գահ՝ սկիզբն արար Տիգրան աշխարհակալութեան, տուեալ մարտ պատերազմի ընդ արքային Ծոփաց, որ Արտանէսն (Վարդանէս) կոչէր (ըստ Ստեփ. Բուզ.՝ Արշակ)։ Կապադովկիա որ չէր ատակ պաշտպանել զանձն՝ ոչ մարթացաւ առնել ինչ վասն բարեկամին իւրոյ հնոյ. նա մանաւանդ ստիպեալ իսկ էր սակաւ մի յառաջ խնդրել ի նմանէ թիկունս օգնականութեան, այսրէն վաճառեալ նմա զամբոցն Տոմիսայ (Ստր. ԺԲ. 2. 1), որպէս հաւանութեան է՝ ի պատերազմին Արիարաթայ Փիլոմետովրայ ընդդէմ Միհրդատայ։ Վերջինն ի Զարիադրեանց, թողեալ իւրում միայնում զօրութեան՝ ընկճեցաւ, և Ծոփք հանդերձ գաւառօքն (Եկեղեաց) յաւելան ի Մեծ Հայս (Ստր. ԺԱ. 14. 15)։

Նուաճեալ Տիգրանայ զայն կարևոր մասն՝ լինէր դրացի Կապադովկիոյ ի ժամանակին՝ զի ընտրութիւնն Արիոբարզանայ ի թագաւորութիւն եղծանէր յերկրին յայնմիկ զազդեցութիւնն Միհրդատայ։ Թագաւորն Պոնտոսի խորհեցաւ իսկոյն հնարս շահելոյ զՏիգրան յիւր կողմն։ Ո՛րպիսի օգուտ էր Միհրդատայ, եթէ մարթէր տիրել Կապադովկիոյ ընդ վերարկուաւ Տիգրանայ, առանց ծախելոյ ո՛չ մարդ և ոչ դանգ մի և առանց հարկելոյ ցուցանել Հռոմայ բարուրս յարձակելոյ անդր։ Գորդիոս, այր իրահամարձակ, առ հրաման երթալ հաստատել ուխտ նիզակակցութեան ի մէջ Միհրդատայ և Տիգրանայ։ Կատարեաց այրն մեծաւ յաջողութեամբ զհրամանն, և ի հաստատութիւն վստահութեան ի մէջ երկուց թագաւորաց՝ քաղաքական դաշնն կնքեցաւ խնամութեամբ ազգատոհմիցն երկոցունց։ Տիգրան արար կին զմին ի դստերաց Միհրդատայ, զԿղէոպատրա, երիցս կրտսեր տիօք քան զնա, այլ մեծ՝ առաւելութեամբ հանճարոյն և առնացի քաջութեամբ։ Ի կատարումն դաշանցն, որ կռեցան գաղտ ի ձեռն Գորդեայ՝ Հայք անցին ընդ Եփրատ (93) առաջնորդութեամբ նորին Գորդեայ և անկան ի վերայ Կապադովկիոյ։ Անզօրն Արիոբարզանէս, ըմբռնեալ ի զեղծի, փորձել իսկ ոչ կամեցաւ կռուել. ժողովեալ զգանձս իւր չոգաւ դէպ ուղիղ ի Հռոմ։ Զօրք Տիգրանայ եդին պահնորդս ի Կապադովկիա, և Գորդիոս կարգեցաւ կուսակալ (Յուստ. ԼԲ. 3)։ Գեղեցիկ էին հնարքն, բայց Միհրդատ զեղծաւ երկայնմտութեամբն հռոմէական ծերակուտին... Շիղա կարգեցաւ ի ծերակուտէն երթալ ունել զԿապադովկիա և նստուցանել զԱրիոբարզան միւս անգամ յաթոռն։ Շիղա՝ սակաւաձեռն գնդաւ անց ընդ Տաւրոս, հար զզօրսն Գորդեայ և զգունդն

Հայոց, որ եկեալ էր նմա ի թիկունս. ապա զհետ մտեալ փախըստէիցն՝ սուր յաղթեր հասանէր մինչև յափունս Եփրատայ այս առաջին անգամ։... Սակայն Միհրդատ էր, որ կրեաց զպարտութիւնն՝ որում չունէր ակն։ Խաբեաց զնա նիզակակցութիւնն Հայոց։

Ի սկզբան ամին 91, իշխանութիւնն Հռոմայեցւոց ի վերայ Փոքուն Ասիայ թուէր միւսանգամ հաստատեալ։... Այլ ի յաջորդ ամին, 90, ետես Հռոմ զկէս աշխարհին Իտալացւոց զէն ի ձեռին յարուցեալ ընդդէմ—որպէս տէին—«գայլոց՝ ազատութեանն Իտալիայ»։ (Այս էր ընկերական պատերազմն)։ Հռոմայեցիք կոչեցին յետս զլեգէոնս իւրեանց ցրուեալս, խնդրեալ թիկունս օգնականութեան ի դաշնաւորաց։... Այն ինչ մեկնեալ Նիղայի ի Փոքուէն Ասիայ՝ Միհրդատ նորոգեաց ընդ Տիգրանայ զդաշինսն։ Որպէս երբեմն Հռոմայեցիքն ի դաշինսն ընդ Եւոզացիս՝ նոյնպէս երկոքին թագաւորքն եդին պայմանս, զի յամենայն մարտս պատերազմաց զորս տայցեն երկուստեք ծախիւք՝ երկիրն նուաճեալ յետ յաղթութեանն լիցի Միհրդատայ, իսկ աւարն, այն է գերիք, անասունք և գանձք՝ Տիգրանայ (Յուստ. ԼԸ. 3, 5)։ Զօրավարք երկու, որպէս թուի հայք, Միհրան և Բագուաս, մտեալ երկրորդ անգամ ի Կապադովկիա՝ հանին վտարանդի զԱրիոբարզան, որ չիշխեաց լինել գիմակալ որպէս երիւք ամօք յառաջ, և եդաւ յաթոռն Մաժաքայ որդին Միհրդատայ Արիարաթ։

Ի Պարթևաց Արշակ Թ, Միհրդատ մեծ, մեռաւ ի դէպ ժամանակի (86) և ոչ ետես զքայքայումն տէրութեան իւրոյ։ Ի վերայ յաջորդին նորա պայթէր մրրիկն. ի սակաւ ժամանակի թշնամին որ ի ներքոյ և թշնամին որ արտաքոյ՝ հանին ի գլուխ զգործ աւերմանն։ Պետութիւնն Պարթևաց վատթարեալ, խախտեալ, քակտեալ յամենայն կողմանց՝ ջնջեալ իմն էր առ ժամուն ի համարոյ ազգաց յառաջակողման Ասիայ։

Զայնու ժամանակաւ էր, զի Հայք անցին պայծառութեամբ ի հանդիսի։ Ցիշեցաք վերագոյնն զհոյակապն կէտ նպատակի և զառաջին յաջողութիւնս արքայի նոցա, այսինքն թէ զիարդ Ծոփք նուաճեցան և Կապադովկիա երկիցս գրաւեցաւ ի հաշիւ Միհրդատայ։ Մինչ թագաւորն Պոնտոսի կռուէր ընդ Հռոմայ՝ Տիգրանայ մոռացեալ զուխտ դաշանցն որ ընդ աներոյն իւրոյ—(Լուբերիէ, Գործք. Գ. 362, կարծէ իմն, թէ էր գունդ օգնական Հայոց ի ճակատուն Միհրդատայ. այլ մեք ցուցաք այլուր, թէ այդ կարծիք չեն ճշմարիտ)—խորհեցաւ օգտել ի տկարութենէ անտի Պարթևաց՝ խընդրել զվրէժ իւրոց նախնի թշնամանաց։ Գունդ մի հայացի եմուտ յերկիր իշխանութեանն Պարթևաց և լինէր միջամուխ մինչև յԱր-

*բեղա և Նինուէ, աւերել, գերփել զերկիրն ընդ որ անցանէր։ Պարթևք ստիպեցան կռել դաշինս ի վնաս իւրեանց, դարձուցանել ի Հայս զեւթանասուն հովիտսն, զորս հանեալ էր նոցա ի նոցանէ յամին 95, նաև տալ նոցա զերկոսին գաւառսն ծաղկեալս հիւսիսային Միջագետաց, այն է զՄիգդոնիա և Ուռհայաստան (Ստր. ԺԱ. 14, 15)։ Հանդերձ այսու հարկ եղև նոցա կռել դաշն նիզակակցութեան ընդ յաղթողին (Յուստ. Խ. 1) և թողուլ կամաց նորա զիւրեանց հին ձեռակերտս (աւատ) ի հիւսիսոյ արևմտից։ Որ աւելի կարևորն էր՝ բդեաշխն Մեծին Մարաց (Դարեհ, որպէս հաւանութեան է, ըստ Ապպիանու, Միհրդ. 106) ետես զՀայս եկեալ հասեալ մինչև ի դուրս Եկբատանայ, որք և այրեցին զապարանս նորա (Իսիդոր Քարակացի Գ. 6)։ Այսպէս ամենայն արուարձականք Տիգրանայ բռնադատեցան ընդունել զվերին իշխանութիւն նորա ծանր ծանր պայմանօք, էր որ աւելի, էր որ պակաս։ Թագաւորք Աղուանից և Վրաց առ Կուր գետով, թագաւորք Մարաց Ատրպատականի —(Միհրդատ արքայ Ատրպատականի արար կին զմին ի դստերաց Տիգրանայ. Դիոն. Կաս. ԼԶ. 16)—և Մեծին Մարաց, որպէս և թագաւորք Կորդուաց և Ադիաբենայ զվերին Դկղաթաւ՝ եղեն հպատակք նորոյ արքայից արքայի, հարին նմա սպաս և եղեն հարկատուք ի ժամանակի խաղաղութեան, և ձեռնտու զօրօք և սատարօք ի պատերազմունս։*

*Այսպէս պատսպարեալ Տիգրանայ յամենայն կողմանց իբրև գօտւով իմն դաշնաւորօք և հարկատու իշխանօք՝ առ ի ձեռն զառաջին խորհուրդսն զաշխարհաց յարևմտից Եփրատայ։ Էր նա յայնժամ, Ուռհայաստանիւ և Կոմագենաւ, տէր անցից գետոյն և մեծի պողոտային կարաւանաց. արաբացի ցեղք, զորս ած նստոյց անդ՝ առնուին բաժ անցից ի վաճառաց ի շահ Տիգրանայ (Պլուտ. Ղուկ. 21, Ստր. ԺԶ. 2, 27, Պլին. Զ. 28, 142)։ Անդուստ դիւրին էր Տիգրանայ ձգել զձեռն քաղել զԱսորիս իբրև պտուղ հասուն։ Բնակիչք երկրին Ասորւոց կոչէին զնա։ Վերջին Սելևկեանք, արդարև գոռոզք՝ չառնուին յանձն, իբրև վաղուց տէարք՝ տեսանել իշխան յերկրին զգաւակ կուսակալաց հարց իւրեանց. այլ զինչ կարող էին առնել զօրք նոցա տկարացեալք ընդդէմ աճեղ բանակացն Տիգրանայ, որոց թիւն հասանէր մինչև ի յիսուն բիւր (Յովս. Նխն. պտմ. Հր. ԺԳ. 6, 4)։ Յամէ անտի 83, Տիգրան եղև տէր համօրէն վերին Ասորւոց, բաց յապառաժն Սելևկիայ, որ նաւահանգիստ էր Անտիոքայ։ Վերջին թագաւորն Սելևկեանց Փիլիպպոս Բ. ապաստանեցաւ ի Կիլիկիա, մինչ որդին Եւսեբոս Անտիոքոս թագուցանէր զանձն յԱսիայն Հոռոմոց (Եւտրոպ. Զ. 14). կանայք և դստերք*

յԹագաւորաց լնուլին զկանանոց յաղԹողլին (Պլուտ. Ղուկ. 14)։ Անտիոք, մին յարքայանիստ քաղաքաց Տիգրանայ՝ հարկանէր դաՀեկանս ի պատկեր նորա, և միում ի զօրավարաց նորա Մագադատեայ յանձն էր վարել զԱսորիս իբրև սատրապ (Ապպ. Ասոր. 48)։ Ոգի առ Ասորւոց աշխարհն զամս չորեքտասան (Ապպիան. 17). Թէպէտ ընդ օտար իշխանաւ՝ վայելեցին խաղաղուԹիւն, Հանգիստ և աւուրս բարենշանս, զորս պղտորեաց միայն աՀագին սասանուԹիւնն, յորմէ կորեան ոգիք իբրև 170,000 (Յուստ. Խ. 2)։ ՅառաջադիմուԹիւնն Տիգրանայ չէառ անդ զկայ։ Յարևմուտս արկ նա ձեռն ի վերջին ծաղիկ պսակին Սելևկեանց, ի դաշտայինն Կիլիկիա։ Բազում քաղաքաց ծաղկելոց բնակիչք խախտեալ անցան ի Հայս (Դիոն Կաս. ԼԶ. 37, Պլուտ. Պոմպ. 28)։ Դարձեալ ի Թելադրութենէ, որպէս ասեն, Միհրդատայ՝ Հայք մտին երրորդ անգամ ի Կապադովկիա, կալան զԱրիոբարզան իբրև ի վարմի և տիրեցին մայրաքաղաքին. բնակիչք Մաժաքայ, որպէս և այլոց մեռասան քաղաքաց Յունաց, ընդ բնաւ իբրև բիւրք երեսուն՝ անցան առնել շէն մարդաշատ զնոր նիստ արքայից արքայի, աՀաւորին Տիգրանայ, 77 ն. ք. գԶր. (Ապպիան. Միհր. 6. 7, Ստր. ԺԱ. 14. 15, ԺԲ. 2. 9)։

Հռոմ, որ Թողոյր յանՀոգս կործանել կամ շիջանել Հին Հարստութեանց, զորս պաշտպանելն պարտէր՝ տեսանէր Հանդարտութեամբ զլառնել փոխանակ նոցա երկուց նոր զօրութեանց, որ անՀնարին Թշնամիքն էին ազդեցութեան նորա, զմին՝ ցամաքային, զՀայս, զմիւսն՝ ծովային, զՀէնս։ Միհրդատ, խորագիտագոյն, եԹէ չունէր յայն ամենայն անցս մասն այնչափ կարևոր, որչափ ընծայէր նմա ի Հռոմ՝ գիտաց գոնեայ օգտել ի նոցունց յամրացուցանել զդիր իւր ի Փոքուն Ասիայ։ Տիգրան էր փեսայ նորա և ոչ դադարեաց երբէք ըստ էութեան ի լինելոյ դաշնաւոր նորա։ Միհրդատ յետ պարտութեանն և փախստեան յերեսաց Ղուկուղղեայ եկն ապաւինել առ նա իբրև առ փեսայ և դաշնաւոր իւր յամին իբր 72 ն. ք. գԶր.։ Տիգրան էր յայնժամ Հզօրագոյնն ի Թագաւորս յառաջակողման Ասիայ։ Տէրութիւն նորա ձգէր յափանց անտի Կուր գետոյ մինչև յեզերս Յորդանանու, և ի լերանց աշխարՀին Մարաց մինչև ի ստորոտս Տաւրոսի. այլ շինուած յօտարոտի մասանց, կազմեալ յամս 25, իբրև կոյտ իմն բեկորոց խլելոց ի դրացի ազգաց, չմածուցելոց առ միմեանս։ Ի միջավայրի անդ էին բուն Հայք, բաժանեալ ի բազում գաւառս, որոց Թիւ առ Պլինեաւ (Բնակ. պատմ. Զ. 27) էր 120։ Ի Հարաւոյ կողոպուտք Սելևկեանց, Ասորիք և Կիլիկիա, ուրոյն նախարարութիւն կամ բդեշխութիւն Հանդերձ Ան-

*տիրքաւ որ էր մայրաքաղաք։ Իսկ առ սահմանօքն Պարթևաց՝ շար իմն մանր մանր թագաւորութեանց, որոց էին բնակ թագաւորք կամ տոհմային իշխանք, այլ ի սերտ հպատակութեան, որպէս Ուռհայաստան, Կորդուք և Ադիաբէն։ Յարևելից և ի հիւսիսոյ այլ ձեռակերտք* (fief) *գաշնաւոր անուամբ, որոց պարտ էր տալ զօր ի թիկունս թագաւորին, որ կոչէր զանձն «Արքայից արքայ»։*

*Նեցուկ տէրութեանն էր բանակ այնպէս անջատ և անյօդ՝ որպէս տէրութիւնն էր։ Նախարարք և սեպուհք էին շունչ իմն և ոգի, յորոց կազմէր հեծելազօրն կուռ վառեալ, ինքն և երիվարք նորա։ ՅԱղուանից անտի էին զրահաւորքն պատենազէնք, իսկ Վիրք, դրացիք նոցա՝ աղեղնաւորք կորովիք։ Թագաւորն Մարաց Ատրպատականի, փեսայ Տիգրանայ՝ մարթէր գումարել հետևակս* 40,000 *և հեծեալս բիւր* (Ստր. ԺԱ. 13. 2)*։ Մարք տային աղեղնաւորս հեծեալս. Արաբացիք՝ զայրուձին անապատի. Կորդուացիք՝ ռահվիրայք էին և շինողք կամրջաց. վարձկան՝ հելլէնք և այլ ևս ազգի ազգի գունդք զօրաց, ընդ ամենայն, ասեն, իբրև* 500,000 *այր։ Ի պահպանութիւն այսպիսի և այսչափ զօրաց պիտոյ էր թագաւորին ամբաւ գանձ. և Տիգրան իբրև զՄիհրդատ ունէր քաղաքս մեծամեծս լի գանձուք, որպիսի էին Ողականն և Բողբերդ ոչ հեռի յԱրտաշատէ, և Արտագերք առ Եփրատաւ* (Արածանի, Ստր. ԺԱ. 14. 6)։

*Տէրութիւնն Տիգրանայ որպէս և դրացւոյն նորա՝ էր այսպէս խառնուրդ իմն անկարգ ի գաւառաց որ լոկ արևելեան էին, և ի գաւառաց որ ի հելլենանալ էին։ Հելլենականութիւնն էր յուժի յաշխարհս այն ինչ նուաճեալս, որպէս ի Կիլիկիա, յԱսորիս, ի Միգդոնիա* (Միջագետք հիւսիսոյ), *որ առաւել քան կիսով չափ էին յունացեալք ընդ իշխանութեամբ Սելևկեանց։ Ամենայն ուրեք բաց անտի՝ արևելք չէին ամենևին փոխեալ. աւանդութիւնք Պարսից չէին ամենևին անկեալ յուժոյ պնդութենէ։ Ի Հայս ազատանին, որ միայն յարգի էր յերկրին՝ կեայր վասն որսոյ և պատերազմի միայն, և առ ուտել և ըմպել։ Արքունիքն՝ ունայն շքով և պերճութեամբ արկանէր ահ ժողովրդեան որ տղայն էր։ Թագաւորն մեծապատիւ մեծարեալ, մինչև կոչել աստուած, ոչ երբէք երևէր ի հրապարակի՝ եթէ ոչ մեծաշուք սպասու, զգեցեալ պատմուճան նկարէն, գաւազան-գաւազան, ի սպիտակէ և ի կարմրոյ* (Դիոն Կաս. ԼԶ. 52), *և վերարկու ի ծիրանւոյ խորշխորշան. գլուխն պսակեալ բարձր աստեղազարդ խուրիւ։ Յորժամ գային առ նա յայցորել՝ թագաւորք չորք ձեռատունկք կային յոտին, ձեռօք կցելովք առ գահոյիւ նորա. և ի հեծանել նորա ի ձի՝ ընթանային նոքա առաջոյ նորա հետի,*

րոկով պատմուճանաւ։ Թագաւորն զօրէն աւագանւոյն հանէր զմի մասն աւուրն յորս, զայլսն՝ յանձնել արդարութիւն և զուարճանալ ընդ կանանւոյն, որ բազում էին թուով ի զբօսանս ծերութեան նորա։

Այլ վաղուց իսկ ազգեցութիւն սովորութեանց արեւմտից սպր-դեալ էր ի խուժադուժ արքունիս անդր։ Դշխոյն Կղէոպատրա, դուստր Միհրդատայ, հարեալ իբրև զհայր իւր հելլենական հրա-հանգաց՝ ձգէր ի Հայս արս ճարտարս, հմուտս յունական դպրու-թեան։ Ամփիկրատէս հռետոր, որ մերժեալ էր արհամարհանօք զհրաւէր Սելևկեանց (Պլուտ. Ղուկ. 22)՝ ընկալաւ զՏիգրանայն։ Մետրոդոր Սկեպսացի, որ յառաջն պաշտօնեալ էր Միհրդատայ՝ կեայր յայնժամ յարքունիս արքային Հայոց, զորոց և զպատմութիւնն իսկ հար ի մատենի (Ստր. ԺԳ. Ա. 55, Ապող. Հռոդ. Դ. 133)։ Որպէս արքունիքն Տիգրոնի՝ նոյնպէս և Տիգրանայն առնոյր զհամ յունակա՛ն թատերայ։ Իբրև Ղուկուղղոս առ զՏիգրանակերտ՝ եգիտ անդ խումբ մի գուսանաց եկելոց ընծայեցուցանել տեսիլ չքնաղ (Պլուտ. Ղուկ. 29)։ Մանկտին թագաւորազն կրթէր ըստ ոճոյ Յու-նաց. մին ի նոցանէ Արտաւազդ, որ ժառանգն էր թագաւորու-թեան՝ եղև մատենագիր անուանի (Պլուտ. Կրաս. 33)։ Եթէ պե-տութիւնն Հայոց էր տևեալ բաւեալ՝ չիք տարակոյս թէ արագ արագ փոխէր ի հելլենութիւն, որպէս Պոնտոսն և Կապադովկիա։ Յունական տարրն, այնպէս հզօր յԱսորիս և ի Միջագետս՝ գործէր ապաքէն իբրև խմոր ազգոյ և փոխէր յիւր պատկեր զմնացեալ զանդուածն։ Յոյնք իրազգած էին այսմ. զիջանէին անագորոյն և գոռոզ բռնակալին Տիգրանայ, համարեալ զայն իբրև կարևոր անցս ի պատրաստութիւն նորոյ յաղթութեան քաղաքավարութեան նոցա։ Շինութիւն Տիգրանակերտի չէր բաւական ի դերև հանել զյոյս նո-ցա։ Ապա կէտ նպատակի արևելեան իշխանին չէր ազատ յամբար-տաւանութենէ. Նորայն Սաղմանասարայ պիտոյ էր նոր Նինուէ. այլ ընտրութիւն տեղւոյն յայտ առնէ, թէ չէր առանց խորհրդոյ և իմաստութեան։ Հին մայրաքաղաքն Արտաշատ էր այնուհետև կարի ի բացեայ ի միջավայրէ անտի տէրութեանն։ Անտիոք էր պատուանդան ոտից Սելևկեանց. անդէն հաստատել զաթոռն՝ տայր կորուսանել զմերձաւորութիւնն տեղեաւ և խնամով ընդ իւրոց ժա-ռանգական գաւառաց։ Տիգրան ընտրեաց կշիռ զմիջին տեղին. հաս-տատեաց զիւր նիստ գոգ ի միջոցի անդ տէրութեանն իւրոյ ընդար-ձակելոյ, երեսուն և եօթն մղոնիւք հեռի ի Մծբնայ, ի տեղւոջ անդ, ուր քսան ամօք յառաջ կապեալ էր զթագ նախնեաց իւրոց։ Տեղին էր դիպան ըստ ամենայնի. ի հիւսիսոյ՝ լեառնն Մասիոս,

բազուկ Տաւրոսի, դաշտ մեծանիստ կրայլին, որոյ մանր մանր բլուրք բերեն զնմանութիւն ալեաց ծովու քարացելոյ, և ի հարաւոյ՝ դաշտք Միջագետաց մեծատարածք և միակերպք. ի մէջ երկոցունց սոցա, առ եզերբ լերինն և անապատին՝ երկիրն է պտղաբեր, ոռոգեալ ի գետոց, որ թափին ի Տիգրիս և յԵփրատ և զոր հատեալ անցանէ պողոտայն մեծ կարաւանաց, պողոտայ, որ Զեւգմայիւ, Եդեսիաւ, Մծբնաւ, Արբեղաւ կապէ զԱսորիս և զՄարս: Մայրաքաղաքն Նոր «Տիգրանակերտ», այն է քաղաք Տիգրանայ՝ եղ յերկրէ որպէս յուռթիւք: Աւագ տոհմք թագաւորութեանն բռնադատեցան, սպառնալեօք գրաւելոյ յարքունիս՝ փոխել անդր զբնակութիւն իւրեանց. բնակիչք երեք հարիւր հազար, Ասորեստանեայք, Մարք, Կորդուք և այլք, գաղթեցին բռնի ի քաղաքն Նոր: Առ առնելոյ մարդաշատ զքաղաքն՝ Տիգրան յամին իբրև 77 յարձակեցաւ ի Կիլիկիա և ի Կապադովկիա, խաղացոյց զբնակիչս երկոտասան քաղաքաց ծաղկելոց, յորս նշանաւոր էր Մաժաք (Ստր. ԺԱ. 14. 15, Պլուտ. Ղուկ. 21): Տիգրանակերտիւ թուէին արդարև յարուցեալ քաղաքք մեծամեծք հնոյն Ասորեստանի և Բաբելացւոց, հանդերձ պարսպօքն յաղիւսոյ յիսուն կանգնոյ բարձրութեամբ, լայնք մինչև բաւական լինել շինութեան ասպաստանաց, հանդերձ ամուր միջնաբերդաւն, հոյակապ ապարանիւքն արտաքոյ պարսպաց, և շուրջանակի որմածիւք երէոց յորս և աւազանօք ձկանց, արարուած զարմանալի այլ առօրեայ՝ արևելեան հանճարոյ, կենդանի պատկեր հայ պետութեանն ծնելոյ յանկարծ, այլ որ կործանելոցն էր ընդ շնչել հողմոյն ձախողանաց:

Զի թէպէտև էին պայծառ յաջողութիւնք Տիգրանայ՝ այլ ի պատահելոյ անակնկալ դիպաց. չէր նա ի բնէ մեծ ոք, այլ անհնարին փառասէր և ժիր. եօթանասնամենի չէր կորուսեալ զիւր կայտառութիւն: Սակայն եթէ մարմինն էր զօրեղ՝ միտքն էին մէջին իմն, անձուկ և անզգոյշ: Քան զմիտսն չէր մեծարգի բոյս բարուցն: Անազորոյն և զեղծ, մէտ ի հեշտանս և արհամարհոտ. յողդողդ ի սիրելն որպէս և յատելն, վասնորոյ և յիրաւի անբաւական յածել զիւրև ո՛չ զդաշնաւորս իւր և ոչ հնազանդեալս, և ոչ իսկ զորդիս իւր: Անչափ սէր պերճութեան և անհնարին ամբարտաւանութիւն առնէին զնա առելի արևելեայց անգամ. այլ ամբարտաւանութիւն չէ մեծութիւն. զոյգն ինչ խրատ կամ ազդ, թէպէտև յօգուտ նորա՝ զայրացուցանէր զնա: Ի յաջողութեան չէր ոք իշխան խօսել առ նա համարձակ կամ գործել ազատ. իսկ յաւուր փորձանաց և չաջողութեան ընկճէր նա յական թօթափել, և լինէր նկուն այնպէս արագ և գձձէր՝ մինչև թշնամեաց նորա անգամ ամաչել

ընդ խոնարհութիւն նորա։ Քսան և հինգ ամք թագաւորութեան և անխառն յաջողութեան ետուն նմա սխալակել և արկանել զաշխարհ ի պատրանս. գրացիք հաւատային թէ իցէ զօրութիւն մեծ, սուտակասպասք՝ թէ ոգի իմն իցէ, և ինքն յաստղ իւր յուսացեալ էր. այլ բախտն թուի բարձրացուցեալ զնա յանչափս, զի արասցէ զնա գահավէժ ի խորխորատ, ապշեցուցանել զաշխարհ ի տեսիլ նկնութեան նորա։

Ի բախել Միհրդատայ զգուռն Տիգրանայ յետ փախստեանն՝ յուշ առնէր նմա զխնամութիւնն, զհիւրընկալութիւն և զթշուառութիւն, զհին դաշինսն որ առնէին մի զերկոսին թագաւորսն, նա և զշահ աշխարհին Հայոց, որոյ ազատութեանն կայր վտանգ մօտալուտ յաւուր յորում արծուէնշանք Հռոմոց կանգնէին առ Եփրատաւ։ Արդարև ի քսան և ի հինգ ամաց հետէ Տիգրան չէր դադարեալ ի թշնամութենէ առ Հռոմայեցիս յայտնի կամ ի ծածուկ։ Արշաւել նորա ստէպ ի Կապադովկիա, նուաճելն զԱսորիս և զդաշտայինն Կիլիկիա՝ էին մէն մի թշնամանք վերին իշխանութեանն Հռոմայեցւոց. կանուխ կամ անագան կոչելոց էր նա տալ համարս. ո՛չ ապաքէն լաւ էր կանխել ունել զառաջս. օգտել ի դիպաց, առ ունելոյ զՀռոմ ի չափու, մինչդեռ Պոնտոս չէր ընկճեալ ի սպառ։ Այս խորհուրդ ճշմարիտ էր յամին 73 և 72. նա և յամին 71 ունէր տակաւին զօրութիւն. զի թէպէտև Միհրդատ չունէր ոչ զօրս և ոչ թագաւորութիւն, բայց և ոչ մին ի մեծամեծ ամրոցաց նորա էին տուեալ ձեռս և չտային թոյլ Հռոմայեցւոց ամփոփել զբովանդակ զօրութիւն իւրեանց։ Այլ հպարտութիւնն Տիգրանայ կարճամիտ և կարճատես, քաջալերեալ ի խորհրդոյ ննջամիտ մարդկան՝ արար զնա այնպէս խուլ թախանձանաց Միհրդատայ՝ որպէս լեալ էր ամաւ միով յառաջ թախանձանացն Կղէոպատրայ։ Սովորութիւն է անագորոյն մտաց գժտել ընդ թշուառս, զի ունիցին բարուրս չօգնելոյ նոցա։ Տիգրան կեղծաւորեցաւ ունել խէթ ընդ աներոյ իւրում. չառ յանձն ընդունել զնա առաջի իւր. և զի չկարէր զլանալ նմա ի սպառ զհիւրընկալութիւն՝ կարգեաց նմա գունդ պահապան, և ի բնակութիւն նորա բերդ մի ամուր ի խորս ուրեք աշխարհին Հայոց ի ճախճախուտ երկրի։ Միհրդատ երբև կալանաւոր ասպնջականին իւրոյ և արգելեալ յանգործութեան՝ եկաց ամիսս քսան ի վնասակար երկրին (յաշնանոյ ամին 71 մինչև ի գարուն 69 տարւոյն Ն. Ք. գՔր.) սրտառուչ յառնուլն հետ զհետէ զհամբաւ անկանելոյ ի ձեռս թշնամւոյն ամուր ամուր քաղաքաց իւրոց, որ էին ակնկալութիւն դարձի նորա։

Ի նմին ձմերան ամպք սկսանէին կուտել զՏիգրանու, և նա

չառնոյր ի միտ, թէ մրրիկ սաստիկ ի վերայ կայր։ Ցայգունէ անտի առմանն Կաբիրայ (Սեբաստիայ) Ղուկուղղոս ետ հրաման աներոյ իւրում Ապպեայ Կղաւդեայ, որ երթեալ էր ընդ նմա յԱսիա՝ երթալ պահանջել ի Տիգրանայ տալ ի ձեռս զՄիհրդատ։ Արդարև կարևոր էր Հռոմայ ածել զթշնամին իւր զբռամբ, այլ միւս ևս գործ էր փորձել զՏիգրան։ Չէր մարթ Հռոմայ, առանց անկանելոյ ի պատուոյ՝ թոյլ տալ Հայոց առնուլ կայ և հաստատութիւն յեզերս Միջերկրականին։ Ցորչափ դաշտայինն Կիլիկիա և Կոմագէն էին ի ձեռս Տիգրանայ՝ չէր հնար Կապադովկիայ լինել ազատ, և իշխանութիւնն Հռոմայեցւոց ի Փոքուն Ասիայ էր վտանգի։ Ցետ նուաճելոյ Տիգրանայ զԱսորիս և զՓիւնիկէ՝ Հրեայք, որ էին ընդ պաշտպանութեամբ Հռոմայ, և Եգիպտոս էին ի տագնապի։ Տրըտունջք յամենայն կողմանց յաճախէին ի Հռոմ։ Ղուկուղղեայ մնայր յընտիր առնել Տիգրանայ ամօթալից դաշն ի բաց կալոյ յաշխարհաց նուաճելոց, կամ պատրաստ լինել ի պատերազմ։ Դեսպանն հռոմայեցի մոլորեալ ի ճանապարհին ընթանայր զհետ Տիգրանայ ընդ բովանդակ աշխարհն Հայոց, մինչև յետ յածելոյ հասեալ յԵփրատ գետ և ապա յԱնտիոք՝ լուաւ եթէ Տիգրան էր յաշխարհին Փիւնիկեցւոց ի նուաճել զվերջին տեղիս, զոր ունէին տակաւին Սելևկեանք։ Պտղոմայիդ, ուր ամրացեալ էր դշխոյն Սեղինէ՝ արգել զՏիգրան զձմեռն ողջոյն։ Կղաւդիոս զայս պարապ համարեցաւ դիպող յածել զիւրև զքաղաքսն Ասորւոց և զդաշնաւորս բարբարոսս Տիգրանայ։ Իշխանն Կորդուաց Զարբիենոս և այլք ոմանք ի ձեռակալնաց Տիգրանայ ետուն գաղտ ձեռս ի Կղաւդիոս, խոստացեալ յետս կալ։ Մինչ այս նենգութիւնք նիւթէին հակառակ իրաւանց ազգաց՝ Տիգրան դառնայր յԱնտիոք։ Պտղոմայիդ եղև անձնատուր, և Սեղինէ անկաւ ի ձեռս յաղթողին։ Դիւրին է գուշակել զզարմանս Տիգրանայ, որ արբեալն էր այնչափ յաջողութեամբ՝ ընդ պատգամաւորութիւնն Ղուկուղղեայ՝ տալ ի ձեռս զՄիհրդատ ի ձաղանս։ Որ աւելի յանդգնութեան էր՝ զօրավարն հռոմայեցի գրէր ի նամակին «Առ Տիգրան արքայ», փոխանակ արքայից արքայի, որպէս սովոր էր նա տալ դրոշմել ի դահեկանս իւր։ Զգնել շուք զեսպանին էր արդարև ծանր, այլ ծանրագոյն ևս էր խոտել զանուն յորջորջանացն։ Տիգրան ժպտելով, ասեն, առ զգիրն արհամարհաւ, զոր ևս իմն ծանրագոյն գործէր զուռզութիւն պատգամաւորին։ Տայր պատասխանի Տիգրան, թէ առանց թեկն ինչ ածելոյ աներոյն իւրում՝ չկամէր աղարտել զանձին պատիւ, տալով զնա ի ձեռս. և առ հատուցանելոյ զփոխարէն թշնամանացն Ղուկուղղեայ՝ չետ նմա ի նամակին իւրում զյորջորջանաց անունն «Իմպերատոր»։ (Զմե-

րանի յամին 71—70. Պլուտ. Ղուկ. 19. 21, 23. Մեմնոն. 4. 46)։

Այս հարուածք գրչի գուշակ էին հարուածոց սրոյ, սակայն Տիգրան առ անմտութեանն եթող անցուցանել զամ մի ողջոյն առանց ի միտ առնլոյ, եթէ պատասխանին իւր էր հաւասար հուչակելոյ պատերազմ։ Ի կիր արկ, մանաւանդ թէ կորոյս զայն ժամանակ ի պատրաստել զնաւակատիս քաղաքին իւրոյ նորոյ և ի պատուհասել զիշխանսն զձեռականս իւր, որք ի բանի լեալ էին ընդ Ապպեայ Կղաւդեայ։ Զիշխանն Կորդուաց ետ սպանանել հանդերձ տամբն ի բերդս նորա յահագինս առ Դկզադաւ, ի Սատաղ և յայլս (Պլուտ. Ղուկ. 29, Ստր. ԺԶ. 1. 24)։ Իսկ զարքայէն Պոնտոսի և զթախանձանաց նորա վասն օգնութեան՝ չարար ամենևին փոյթ, մինչ Ղուկուղղոս հանէր ի գլուխ զնուաճումն քաղաքաց Պոնտոսի։ Ղուկուղղոս չետ պատասխանի իսկ և իսկ Տիգրանայ ի չլսել նորա բանից դեսպանին իւրոյ, զի մինչև արկեալ ձեռն ի գործ՝ համարէր ի դէպ աճել զբռամբ զվերջին ամրութիւնսն Պոնտոսի։ Անկումն Սինոպայ և Ամասիայ առնէր զձեռն նորա արձակ. ուստի և յամին 70 — 69 ետ ձմերել զօրուն ի Պոնտոս և ի Կապադովկիա, և պատրաստէր բազում գաղտնեօք միաբան ընդ Արիոբարզանայ անցանել ընդ Եփրատ գարնայնի։ Գործն ըստ իրաւանց թուէր արդար, այլ ըստ օրինացն պատերազմի ունէր դժուարութիւն բազում։ Հայաստան էր երկիր անծանօթ Հռոմոց, որ գիտէին զայն համակ լեռնային, ոռոգեալ ի մեծամեծ գետոց, խստաշունչ հողմովք, կարճ ամարամբք, զորոց զհետ գային երկայն և սաստիկ ձմերունք. գարձեալ մնայր կրել ընդդիմութիւն մեծ ի բնակչացն, որ առ ի չգոյէ զինուորական արուեստին՝ մարթէին զդէմ ունել օտար թշնամւոյն մոլեկան կրօնիւքն և սովորութեամբ ազգին. նա և ի զօրս իւր չէր վստահ Ղուկուղղոս։

Մինչ Ղուկուղղոս պատրաստէր յարձակել ի Հայս՝ Տիգրան առ ի միտ թէ պատերազմն մօտալուտ էր, և մտանէր ի հնարս հալածելոյ... 

թայլթանաց զդէմ ունել վտանգին։ Ի գարնան 69 ամին, քան ամսովք յետոյ քան զգալուստն Միհրդատայ ի Հայս՝ յանձն առ Տիգրան խօսել ընդ նմա։ Պատահել միմեանց երկուց թագաւորաց եղև մեծաշուք և բազում վստահութեամբ երկուստեք աւուրս բազումս, մինչև փարատել զամենայն կասկած տարակուսի։ Որոց մի անգամ արկեալ էր քսութեամբ թշնամութիւն ի մէջ փեսային և աներոյ՝ լուծին զվրէժն մահուամբ։ Մեգրոտոր Սկեպսացի պրծաւ ի սրոյ յանկարծահաս մահուամբ, առեալ թոյն, որպէս կարծէք (Պլուտ. Ղուկ. 22, Ստր. ԺԳ. 1. 55)։ Թագաւորքն երկոքին միա-

բանեցան, թէպէտ անագան, չմնալ յարձակմանն Հռոմայեցւոց· այլ սկիզբն առնել կռուոյն ի Փոքրն Ասիա։ Միհրդատ առնոյր վաշտ մի 10,000 հեծելոց՝ միւսանգամ նուաճել զթագաւորութիւն իւր, և Տիգրան հրաման տայր զօրավարաց իւրոց մտանել ի Կիլիկիա Հռոմոց և ի Լիկաւոնիա. այլ ի սկսանել անդ գործոյ պատերազմի Հռոմայեցիք մտեալ էին յերկիրն Հայոց։ Ղուկուղղոս բաժանեալ էր զզօրս իւր յերկուս. արք 6,000 ընդ ձեռամբ Սոռնատեայ մնային պահել զՊոնտոս. ի մնացելոցն որ էին լեգէոնք երկու վաղեմեանք և օգնական զօրն յԱսիացւոց, Գաղատացիք և Թրակացիք, ընդ ամենայն արք իբրև քսան հազար, կազմէր բուն բանակն (Պլուտ. Ղուկ. 24)։ Կամուրջք որ արկան ձմերանի անցանել ընդ Եփրատ՝ էին կարճ, զի գետն յորդեալ յանձրևաց գայր դարիւ և դարիւ. այլ յանկարծ նուազէին ջուրքն գիշերայն, մինչև մարթել անցանել զօրուն գրեթէ հետիոտս (Սալուստ. Հտկտ. Դ. 11)։ Առաջին բերդն առ ձախոյ եզերբն՝ էր Տոմիսա, որ առաւ և տուաւ Կապադովկացւոց. յետոյ անց զօրն ընդ Ծոփս առանց հանդիպելոյ ընդդիմութեան յերեսաց բնակչացն, որ այն ինչ մտեալ էին ընդ լծով Հայոց, և առանց յամելոյ ի պաշարման փոքր փոքր ամրութեանց։

Ղուկուղղոս անցեալ էր ընդ Տիգրիս արևմտեան ոչ հեռի յականց անտի, և խաղայր դէպ ուղիղ ի կերճս Տաւրոսի և ի վերայ Տիգրանակերտի, մինչ Տիգրանայ ազդ եղև մերձենալ նորա։ Մինչև ցայնժամ ճամբարն Հայոց կեայր լի անրջովք։ Խնդիր մեծ այն էր գիտել, թէ մնալո՞ց էր արդեօք Ղուկուղղոս յԵփեսոս ի դիմի հարկանել ասիական գնդաց, եթէ տալոց էր խոյս առանց կռուոյ յայնկոյս ծովուն։ Առաջին պատգամաւորն որ ետ գոյժ, թէ գայր Ղուկուղղոս դիմագրաւ՝ կախեցաւ զի ստեաց. այլ ընդ հուպ յայտնի եղև, թէ պարտ էր ի փախուստ աճապարել կամ տալ ճակատ։ Վայր մի զմտաւ ած Տիգրան մարթել զդէմ ունել թշնամւոյն զօրօքն որ ընդ ձեռամբ իւրով էին։ Մի ի զօրավարաց նորա Միհրբարզան առ բաժին մի հետևակաց, 3,000 այրուձի և պատուէր՝ ածելոյ զՂուկուղղոս մեռեալ կամ կենդանի։ Զօրավարն պատահէր Հռոմայեցւոց զճանապարհայն, մինչ յառաջապահն կազմէր բանակ։ Ղուկուղղեայ պատուէր տուեալ էր Սեքստիղեայ զառաջս միայն ունել թշնամւոյն 1,600 ձիաւորօք և նոյնչափ հետևակօք, այլ նա ստիպեցաւ տալ ճակատ, և տարաւ զյաղթութիւնն. Միհրբարզան սպանաւ և զօրն ցրուեցաւ։ Ցայս գոյժ Տիգրան խոյս ետ ի հիւսիսակողմն Տիգրիսի դիմակալ լինել Հռոմոց ի բուն Հայս։ Մագադատէս կուսակալ Ասորւոց կոչեցաւ իւրով պահապան գընդաւն. իբրև ի նշան հրաժարելոյ իւրոյ ի թագաւորութենէն Սե-

լեկեանց՝ Տիգրան եա գլխաւոր զդշխոյն Սեղինէ, որ էր ի բերդին Սելեկիայ ի Կոմագէն դէմ յանդիման Զեւգմայ, ուր էր նա ի դիպահոջ (Ստր. ԺԶ. 2. 3)։ Երկու ամրոցք մեծամեծք ի հարաւոյ Տիգրիսի յանձն լեալ էին, մին, Տիգրանակերտ՝ Մանկեայ զօրավարի, միւսն, Մծբին՝ Գուրասայ, եղբօր թագաւորին։ Ինքն Տիգրան խաղացոյց զբուն բանակն յայնկոյս լերանց, որում հետամուտ էր Մուրենա, որ հան ի նմանէ ի կիրճս անդ զբեռինսն և զգունդն վերջապահաց։ Միւս ևս գունդ յԱրաբացւոց որ երթայր խառնել ի բուն բանակն՝ արգելաւ և հարաւ ի զօրապետէն Սեքստիղեայ (յամարայնի 69)։

Այս սկիզբն յեղակարծ կռուոյ հակառակ էր յոյժ պատերազմական հանճարոյն, զորոյ զհանդէսն տուեալ էր ցայնժամ Ղուկուղղոս։ Փախուստն Տիգրանայ եղև այնպէս արագ, մինչև ոչ ժամանել նմա առնուլ զգանձս իւր և զկանանսն որ էին ի Տիգրանակերտ։ Մայրաքաղաքն իսկ և իսկ պաշարեցաւ ի Սեքստիղեայ. զօրավարն կալաւ առանց կռուոյ զարուարձանսն և զարքունիսն որ էին արտաքոյ պարսպացն, այլ քաղաքն և միջնաբերդն թուէին զդէմ ունել ի սպառ։ Պահանորդքն, որ էին ի յոյն և ի կիլիկեցի վարձկանաց՝ տեղային ի վերայ պաշարողացն զնետսն իբրև զանձրև, և նաւթ եռացեալ, որ սպառէր զմեքենայս պաշարմանն (Պլին. Բ. 101, 235)։ Մինչդեռ Հռոմայեցիք կռուէին ընդ բերդին ականս և խրամս հատեալ՝ Տիգրան գումարէր զզօրս իւր ի վերայ բարձրաւանդակին Վանայ։ Բազումք ի հնազանդելոց նորա եկին ի կոչն. թագաւորք Ադիաբենայ և Ատրպատականի ածին զօրս ի թիկունս. Աղուանք և Վիրք և Արաբացիք Բաբելոնի առաքեցին նոյնպէս զհեծելանցն։ Միհրդատ կոչեցաւ իւրովք հեծելովքն, և խազայր նա յամր՝ առաքեալ առաջի իւր զզօրավար իւր Տաքսիղոս, որ խրատ տայր Տիգրանայ՝ չդնել զիւր թագն ի վտանգի. լաւ է, ասէր, յերկարել զգործն, և հեծելովքն որովք առաւել էր քան զթշնամին՝ հատանել զպաշարն Հռոմայեցւոց։ Այս իմաստուն խրատ, որում նպաստ լինէր և Միհրդատ պատգամաւորօքն՝ չկարաց յաղթել թեթևադրութեան սուտակասպասացն և սաստիկ տենչանացն Տիգրանայ՝ ազատելոյ զկանայս և զգանձս իւր որ արգելեալ կային ի մայրաքաղաքին։ Ի սկզբանն յաջողէր ամենայն։ Գունդ մի 6,000 հեծելոց եղև ձեռնհաս ճեղքել ի գիշերի զգունդ պաշարողացն, տեղացեալ ի նոսա նետս իբրև զտարափ, և առեալ զհարճս թագաւորին և զգանձսն մեծագինս՝ հորդեցին իւրեանց ճանապարհ ընդ գումարտակ զօրուն Հռոմոց և Թրակացւոց, թողեալ ի ճանապարհի բազմութիւն վիրաւորաց և գերեաց (Մեմնոն Գ. 56, և Ապպիան. Գ. 85)։

Զայսմանէ լռէ Պլուտարքոս, զի չէր ի պատիւ Ղուկուղղեայ արուեստին և քաջութեանն։ Այս յաջողութիւն փոխանակ գոհացուցանելոյ զՏիգրան՝ ևս առաւել զայրացոյց։ Թիւ զօրաց նորա հասանէր յայնժամ յ80,000 պատերազմողաց, որ ծաղիկն էին արևելից. համարէր զանձն բաւական հզօր ի բաց վանել զպաշարիչս մայրաքաղաքին իւրոյ առանց մնալոյ օգնական զօրուն Միհրդատայ։ Իբրև էջ նա ի հովիտ անդր Տիգրիսի և ետես զգոյզն բանակ Ղուկուղղեայ, ղակիշ ածեալ յայնկոյս գետոյն ի դաշտին՝ քամահեաց. «կարի իմն են, ասէ, եթէ ի դեսպանութիւն գան, իսկ եթէ ի պատերազմ՝ սակաւ յոյժ են»։ Տաքսիղոս փոքր միւս ևս և տուժէր զկեանսն, զի յամառէր խրատ տալ՝ մի՛ մտանել ի կռիւ։

Ղուկուղղոս առեալ համբաւ, թէ գայր նմա զօր յօգնականութիւն՝ յանդգնեցաւ յանդգնութիւն մեծ, այն է տալ ճակատ առանց բառնալոյ զպաշարումն։ ԶՄուրենա թողեալ վեց հազարօք յանդիման Տիգրանակերտի՝ ինքն մնացելովքն հետևակաց, իբր 10 կամ 12 հազար արամբք (24 վաշտիւք), 1,000 աղեղնաւորօք և պարսաւորօք և բովանդակ այրուձիովն որ էին երեք հազար՝ խաղաց ընդ առաջ Տիգրանայ (Մեմնոն Գ. 57. այլք ի պատմագրաց դնեն աւելի)։ Մեծ էր արդարև խտիրն, այլ ասիացի զինուորք էին իբրև հօտ առանց քաջութեան, առանց հրահանգաց, առանց հրամանատարի։ Զերկոսին բանակսն բաժանէր Տիգրիս գետ, որ անտի սակաւիկ մի հեռի կազմէր արմուկն յարևմուտս կոյս և տայր անցս։ Հռոմայեցիք ունէին զտափարակն. գետեզրն զոր կալեալ էին Ասիացիքն՝ էր անհարթ. ի միջավայրի անդ նոցա բլուր մի տափարակ դիւրին յառնուլ։ Ի վեցերորդումն հոկտեմբեր ամսոյ ամին 69, Տիգրան ետես այգուն, զի լեգէոնք Հռոմայեցւոց ելին ըստ ճամբարն կարգաւ՝ զթիկունս առ թշնամին դարձուցեալ. կոչեալ զՏաքսիղոս ցուցանէ նմա մատամբն զխաղալ նոցա յետս. այլ այն ինչ խօսեալ նորա՝ տեսանէ զի զկայ առին Հռոմայեցիքն մօտ ի հուն մի գետոյն, և սկսան անցանել յայսկոյս բաժին առ բաժին։

Տիգրան հազիւ մարթացաւ կարգել զզօրս իւր ի ճակատ. փեսայ նորա, արքայն Ատրպատականի, կալաւ զաջ թևն, թագաւորն Ադիաբենայ՝ զձախն, ինքն էր ի միջոցին։ Հետևակազօրն կայր յետոյ կուսէ. այրուձին կուռ վառեալ ծածկէր զաջ թևն առ ոտամբ բլրոյն. ի թիկանց անտի ի վերայ բարձրաւանդակին ամրացեալ էր ողջ և կազմած պատերազմին։ Զօրութիւն Ասիացւոցն էր յայրուձին և ի գունդ աղեղնաւորացն, այլ չեղև մարթ վարել ոչ զմինն և ոչ զմիւսն։ Ղուկուղղոս յական թօթափել իմացաւ զհանգամանս

տեղւոյն, և թէ զիարգ յարձակելոց էր։ Ընդ անցանել զօրուն ի ձախակողմն անդր գետոյն՝ խաղացոյց զայրուձին Գաղատացւոց և զԹրակացւոց ի վերայ զրահաւորացն Հայոց, հրաման տուեալ իւրոցն տակաւ ընկրկել յետս և ձգել զնոսա ի դիւրն. ինքն իջեալ յերիվարէն՝ մերկացաւ զսուսերն և սկսաւ ելանել ընդ բլուրն, որպէս թէ յարձակեցի վաշտիւք երկուք որ գային զկնի։ Ճանապարհն էր եւթն հարիւր կանգուն երկայնութեամբ։ Հասեալ ի կատար անդր՝ Ղուկուղղոս գոչեաց ի ձայն ահեղ, «Յաղթութիւն», և անկաւ իբրև զկայծակն ի վերայ աղխուց թշնամւոյն. սպասաւորք և գրաստք լեալ ցիր և ցան՝ արկին ահ ի ճակատ անդր աջոյ թևին։ Ի նմին ժամու այրուձին Հռոմայեցւոց դարձոյց զերեսս և ած յիւր վերայ զզրահաւորսն Հայոց որ պնդէին զհետ նոցա։ Ղուկուղղոս ունէր զյետոյս նոցա, պատուէր տուեալ հետևակաց իւրոց՝ հարկանել զազդերս նոցա որ միայն էին անզրահ։ Զրահաւորքն ոչ կացին մնացին բախելոյ ընդ միմեանս. ցրուեցան ընդ ամենայն կողմանս, և անկան ի թանձրութիւն անդր հետևակազօրուն։ Գունդքն լուծանին ցրուին կարգ ըստ կարգէ, և վաղվաղակի դաշտն և բլուրք ծածկին ի բազմութենէ փախստէիցն։ Արգելեալք ի ծանրութենէ զրահիցն և ի խուռն բազմութենէն կծկեալք կապեալք՝ Ասիացիքն կոտորեցան չարաչար, հետամուտք հալածեցին զնոսա ասպարէսս քսան, ի տաքաժամել աւուրն միայն զկայ առեալ. յայնժամ ուրեմն տայր Ղուկուղղոս ժողովել զկապուտն։ Ասիացիքն կորուսին 30,000 այր ի ճակատուն։ Ըստ համբաւոյն Ղուկուղղեայ առ ծերակոյտն՝ հինգ մեռեալ և հարիւր վիրաւորք անկան ի ճակատուն ի Հռոմայեցւոց անտի։ Անօգուտ պարծանք, զոր եթէ համարեսցուք ճշմարիտ՝ նուազեցուցանէ զփառս յաղթողին մանաւանդ քան յաղթելոյն։

Տիգրան խոյս ետ ի ճակատէն 150 հեծելովք, ընկեցեալ զխոյրն հանդերձ ապարօշիւն առ ի չտալոյ ծանօթս։ Զտեղի առ յառաջնում՝ բերդին որ դիպեցաւ նմա զճանապարհայն։ Անդ եկն եգիտ զնա Միհրդատ։ Թագաւորն Պոնտոսի ճանապարհ արարեալ կարճ օթևանօք ի Տիգրիս կոյս՝ հանդիպէր գունդ գունդ փախստէից, որ եւտուն նմա զգոյժ պարտութեանն։ Երկոքին թագաւորքն տեսին զմիմեանս այլակերպս յոյժ, և ոչ որպէս զառաջին նուագն։ Քանի սրտառուչ էր տեսիլն։ Միհրդատ էջ յերիվարէն, իբրև ետես զՏիգրան. գիրկս արկ նմա արտասուօք, ետ նմա պատմուճան արքունի, զթիկնապահս իւր և զսպայս։ Ի միում աւուր կարճամիտ թագաւորն, որ սակաւ մի յառաջ ողողէր ի փառաւորութենէ՝ անկեալ դնէր ի մեծամիտ պարծանացն ի յատակ անդր անյուսութեան։ Միհրդատ զամենայն հնարս հնարեցաւ քաջալերել զնա և տալ

նմա յանձնէհեր քաջութեննէն, որով լի էր նա։ Տիգրան իբրև մանուկ ծեր՝ եդ շուք լրջմտութեան աներոյն իւրոյ, և եդ ի մտի տնօսալ զայս նուագ, առանց ընդ բանս ինչ ածելոյ, հրամանաց և կարգաց Միհրդատայ յերս քաղաքի և զինուորութեան։ Եւ զի անցեալ էր տարին և մօտ ի կատարած՝ չէր մարթ ունել զառաջս վնասուց պատերազմին Տիգրանակերտի. ամենայն գաւառք ի հարաւոյ Տիգրիսի կորուսեալ էին։ Ի քաղաքին պաշարելոյ՝ յոյն և կիլիկեցի զինուորք, վարձկանք, ընդ հրամանատարութեամբ զօրապետաց Միհրդատայ՝ իսկ և իսկ ի վաղիւն յետ պատերազմին սկսան խլրտել. կուսակալն Մանկէոս հան ի նոցանէ զզէնսն և խորհեցաւ ընդ սուր հանել զամենեսին. այլ վարձկանքն արգելին զքարբարոսն բրօք, և մատնեցին ի ձեռս Հռոմայեցւոց զմասն միջնաբերդին, որում պահ ունէին։ Ղուկուղղոս ոչ դրժեաց պայմանացն. կանայք և ստացուածք Յունաց խնայեցան, և բնակիչք քաղաքացն և աւանաց Յունաց, զորս խախտեալ ածեալ էր Տիգրան ի գործել շէն զնոր մայրաքաղաքն՝ արձակեցան ի տեղիս իւրեանց. ապա մատնեցաւ քաղաքն յաւար։ Անչափ էր կողոպուտն. ի տան արքունի գանձուն գտան քանքարք 8,000, այսինքն իբր 24,000 բիւր դահեկան արծաթի, և գինք կահուց և կարասեաց վաճառաց էին իբր 8,000 բիւր. իւրաքանչիւր զինուոր էառ բաժին դահեկանս (դրամ) 800։ Ի թատրոնին զոր շինեալ էր Տիգրան, այլ չև էր կատարեալ զնաւակատիսն՝ հռչակեցան տօնք ի պատիւ յաղթութեանն Ղուկուղղեայ, և Տիգրանակերտ եղև այնուհետև աւան անշուք։

Այլ ևս քաղաքք ի հարաւոյ Տիգրիսի և բազումք ի գաւառատեարց, որ խնդրէին պարապ թօթափելոյ զլուծն՝ ձեռս ետուն ի յաղթող անդր։ Ի թուոյ սոցա էին արքայն Կոմագենայ Անտիոքոս Ա, որպէս Միհրդատն ի զաւակէ Աքեմենեանց ի հօրէ, և Սելևկեանց ի մօրէ, և հզօր բդեաշխն Արուեստանի (հիւսիսային Միջագետաց. Դիոն Կաս. Խէ. 27)։ Զօրն Հռոմայեցւոց, տէր համօրէն գաւառացն Տիգրանայ ի հարաւոյ Տիգրիսի բաց ի Մծբնայ՝ ձմերեաց ի Կորդուս, որոյ բերդքն ոչ կալան զդէմ։ Եգիտ նա ի նոսա պաշար բազում ցորենոյ, և արար յուղարկաւորութիւն մեծ Զարբիենայ (իշխանին Կորդուաց. ձմերայնի 69—68)։ Ի նմին ձմերան Միհրդատ և Տիգրան գումարեցին զզօրս իւրեանց վասն պատերազմին որ առաջի կայր։ Իմաստութիւն և պնդութիւն արքային Պոնտոսի յայտ յանդիման երևէր յամենայն հնարսն, զոր հնարէին երկոքին թագաւորքն միաբան։ Հատին անցին զամենայն աշխարհն Հայոց կոչել զերիտասարդս ի զէն վասն հայրենի աշխարհին։ Գրեցին զբովանդակ աշխարհն ի զինուորութիւն, կալեալ զուժեղագոյնսն

միայն ընդ դրօշու։ Այսպէս գումարեցին հետևակս իբրև 40 և հեծեալս իբրև 30 հազար (Փղեգոն, Տրագ. Հտկտ. 12. Ապպիան համարի հետևակս 70,000 և հեծեալս 35,000), որ բաժանեցան ի վաշտս և ի գունդս, և կրթեցան որչափ մարթ էր ըստ Հռոմոց օրինի ի ձեռն սպայից Յունաց կամ եկաց իտալացւոց ի սպասու Միհրդատայ։ Այս բանակ չէր ի Հայոց միայն, այլ և ի Վրաց, ի Մարդաց և մանաւանդ ի Մարաց, զորս ածէր փեսայն Տիգրանայ Միհրդատ, արքայ Ատրպատականի։ Ձձմեռն ողջոյն և զգարունն կազմեցին զէնս, և բաշխեցին պաշար ցորենոյ ի բերդս բերդս։ Ջանային մանաւանդ ցուցանել զպատերազմն իբրև կրօնից և ազատութեան, և առ ևս առաւել գրգռելոյ ի յասումն զժողովուրդն պաշտօնասէր՝ հանեին համբաւ իբր թէ վախճան արշաւանին Ղուկուղղեայ էր առնել կապուտ կողոպուտ զմեհեանսն մեծագանձս և զառաւել նուիրականս, որպէս էր մեհեանն Անահտայ ի վերայ ճանապարհին յԱրտաշատայ յԵկբատանս (Կիկ. վասն Մանիլ. օր. Թ. 23)։ Նա ասէին ևս, թէ պատերազմն այն ոչ ընդդէմ Տիգրանայ և Միհրդատայ միայն էր, այլ հակառակ ամենայն թագաւորաց արևելից, նա և զՊարթևս ջանային ձգել ի կուին։ ՁՍանատրուկ ծեր (76—68) պայազատեալ էր Հրահատ Գ, որ աստուածն կոչեցաւ (Փղեգ. անդ)։ Սա խորհէր բարձրացուցանել զտէրութիւն իւր, զանկեալն և զնուազեալ ի քսան ամաց հետէ։

Ցեռնտուութիւնն Պարթևաց ունէր կշիռ մեծ. երկուստեք ընծայէին նմա մեծարանք, ի Տիգրանայ և ի Միհրդատայ ի միոջէ կողմանէ (Սաղուստ. Հտկտ. Դ. 20, այն է անուանի թուղթն Միհրդատայ առ Արշակ), ի նոր դաշնաւորաց Ղուկուղղեայ, ի մանր մանր թագաւորաց Տիգրիսի և Եփրատայ ի միւսմէ կողմանէ։ Տիգրան խոստանայր Հրահատայ ի վարձ ձեռնտուութեանն զամենայն երկիրն, զոր հանեալ էր ի նախնեաց նորա, այն է զվերին Միջագետս, զԱդիաբէն և «զմեծամեծ հովիտսն»։ Ղուկուղղոս կայր ի զգուշի, կցեալ սպառնալիս խոստմանցն, յուշ արարեալ նմա զդաշինսն, զոր կռեալ էր Պարթևաց քսան և երեք ամօք յառաջ ընդ Շիղայի։ Հրահատ մինչև մտեալ յուխտ՝ կամեցաւ զննել զգետինն։ Լինել եղև նա ունկնդիր Տիգրանայ, սակայն փութացաւ և առնել հրեշտակս ի բանակ անդր զօրավարին Հռոմոց։ Ղուկուղղոս բազում մեծարանս եդեալ հրեշտակացն՝ յանձն արար տեղակալին իւրում Սեքստիլեայ երթալ ի Տիզբոն յողջոյն Հրահատայ. այլ ընտրութիւն դեսպանին խրտոյց զՊարթևն. Սեքստիլոս էր այր պատերազմող, որ կարի իմն ի մօտոյ դիտէր զպատրաստութիւն զօրութեանն Պարթևաց։ Հրահատ ած զմտաւ, թէ կարծե-

ցեալ պատգամաւորն էր լրտես, և եդ ի մտի ի բաց կալ ի լինելոյ ձեռնտու արգեամբ։ Տեսեալ զամենայն հանդերձանս պատերազմի՝ ետ երկոցունց կողմանց ևս ակն ունել օժանդակութեան նորա։ Երկիւղ Պարթևին չէր ունայն. մինչ Ղուկուղղոս կերպարանէր խնդրել զօգնութիւն նոցա՝ արգեամբ նիւթէր արշաւանս ի վերայ Տիզբոնի, և ետ վասն այսորիկ հրաման Սոռնատեայ գալ զկնի իւր գնդօքն, զորս թողեալ էր ի Պոնտոս։ Այլ զօրք տեղակալքն իմացեալ զխորհուրդ արշաւանին՝ չառին յանձն թողուլ զբանակատեղիս իւրեանց, և զօրն Կորդուաց յայտ արար նոյնպէս, թէ չէր հաճ ընդ նոր արշաւանն։ Այս առաջին ազդն էր, յորմէ պարտ էր զգաստանալ Ղուկուղղեայ. արդարև ի բաց եկաց նա ի կռուելոյ ընդ Պարթևս, այլ ոչ ի հանելոյ ի գլուխ զգործ նուաճելոյ ի սպառ զՀայս։

Անցեալ էր գարունն, յորժամ զօրն Հռոմայեցւոց թողեալ զբանակատեղին որ ի Կորդուս՝ անց ընդ լերինսն, որ անջրպետեն զհովիտն Տիգրիսի ի բարձրաւանդակէն Հայոց. այս ճանապարհ էր, ընդ որ անց երբեմն բիւրն Յունաց ի նահանջելն յետս։ Մեղմագոյն ժամանակ տարւոյն ի Հայս տևէ ամիսս չորս, ի յունիս ամսոյ մինչև ի սեպտեմբերիոս ամիս, և բոյսք երձակին անդ այնպէս անագան, զի մինչ Ղուկուղղոս մեկնեալ ի Միգդոնեայ յամարայնի ել ի դիւր անդր Վանայ՝ եգիտ զի տակաւին չէր առոքացեալ ցորեանն։ Երկոքին թագաւորքն դաշնակիցք, թէպէտ և առաւել թուով՝ յամառեալ կացին յետս ի տալոյ ճակատ։ Հարստագոյն մասն զօրուն, որում հրամայէր Միհրդատ՝ ղակէշ ածեալ կայր իբրև յամբի ի վերայ բլրոց, ի կողմանէ գնդին ասպատակաց. մինչ Տիգրան, այրուձիովն, շուրջ գայր զՀոռոմովքն և ջանայր առնուլ զպաշար նոցա։ Ղուկուղղոս վանէր ի բաց զյարձակումն, նա առ իսկ մթերս ինչ ի մթերից Տիգրանայ. այլ ի զուր աւերէր նա զերկիրն ասպատակաւ և ած փոս շուրջ զբանակաւն Հայոց.—դաշնաւորքն կացին մնացին անշարժ ըստ իմաստուն խորհրդոյն Միհրդատայ։ Ղուկուղղոս եղև առաջին, որ կորոյս զհամբերութիւնն։ Ժողովեալ զլեգէոնս իւր՝ ել ընդ հովիտն Արածանւոյ ի վեր, դէմ եդեալ ի կողմն Արտաշատու, ուր Տիգրանայ եդեալ էր զկանայս իւր և զկաց մնաց գանձուցն։ Որպէս յանցելում ամին՝ զայս նուագ ևս Տիգրան չունէր ժոյժ տեսանել զկանանին իւր անկեալ ի ձեռս օտարի։ Առեալ զզօրս իւր լինէր նմա հետամուտ զհիւսիսայնն ափամբ գետոյն։ Յետ երթալոյ իբրև չորից աւուրց ճանապարհ՝ Ղուկուղղեայ հասեալ ի հուն մի՝ կարգէր զզօրս իւր յերկուս ճակատս, իւրաքանչիւր յերկոտասան գնդաց, և անցոյց նախ

զայրուձին։ Հեծելազօրն Մարդացւոց և նիզակաւորք Վրաց հարան ուժնութեամբ ի դիմի. այլ իբրև գունդ հետևակացն ևս անց յեզր անդր աջակողման գետոյն՝ բարբարոսքն չհանդուրժեալ եւլին փախստեայ. այրուձին Հոռոմոց զհետ պնդեալ նոցա՝ կոտորեաց նոր իմն օրինակաւ։ Փախստեայքն սաէպ սաէպ զերեսս դարձուցեալ՝ տեղայրն ի վերայ Հոռոմայեցւոց իբրև զսարափ նետս թևաւորս մխեալս ի թոյն, որ բեկանէին ի մարմնի և առնէին վէրս անհնարինս։ Մինչ այս մինչ այն՝ Տիգրան իւրով թիկնապահօքն և փեսայ նորա մարականն գնդաւն կռուէին դէմ առ դէմ երկոտասան վաշտուցն Հոռոմոց, և արքայն Պոնտոսի ջանայր խուճապեցուցանել զնոսա յետուստ։ Վայր մի վտանգ մեծ կրեցին Հոռոմայեցիքն. այլ Ղուկուղղոս կոչեաց զայրուձին իւր, որ կայաւ զդէմ Տիգրանայ՝ մինչ ինքն ճեղքէր զգունդն մարականն. իսկ զՄիհրդատ խախտեցին վաշտք երկրորդ զօրաբաժնին։ Դաշնաւորքն սրացան եւլին ի ճակատէն, թողեալ մեռեալս 5,000 և բազմութիւն գերեաց, յորոց միջի գտանէին ոչ սակաւ արք աւագք։ (Սեպտեմբեր 68 ամի. Պլուտ. Ղուկ. 3, Տիտ. Լիւ. և Փղեգոն ի Հտկտ., Դիոն Կաս. ԼԶ. 7)։

Այս նուագ ևս Ղուկուղղոս ել յաղթող յանհաւասար պատերազմէն։ Տեղի ճակատուն էր խռնեալ մեռելովք և վիրաւորօք. Արտաշատ էր տակաւին հեռի, և ամառն Հայոց մերձ էր ի կատարած։ Այն ինչ գնացեալ նոցա օթևանս ինչ՝ սկսան սառնամանիք և ձիւնաբերք։ Ակնկալութիւնն հասանելոյ «ի Կարքեդոնն Հայոց» և նովին ի վախճան պատերազմին՝ ետ ժամանակ մի ևս ժուժկալել զօրուն, այլ որչափ խաղային յառաջ՝ այնչափ դժնդակ լինէր չուն։ Ամենայն ուրեք անտառք և ճահիճք, անձուկք քարանձաւաց, գետք կցեալք կիսով, որոց սառն բանայր ընդ ոտիւք երիվարացն և հատանէր զկարթս նոցա։ Երիվարք դժկամակէին ըմպել զջուր աւազանաց սառուցելոց. զօրն ստիպեալ բանակել ի տղմի՝ տառապէր անհնարին. պաշարն ևս էր անօսր և յոռի։ Լէգէոնականք ոչ յամեցին տազտկալ, և զօրավարքն աղաչէին զՂուկուղղոս՝ հարկանել փող դարձի, եթէ չէին նմա կամք տալ ցրուել բանակին։ Նա չառ յանձն զառաջինն, այլ զօրականն սկսաւ խեռել. բանակն հնչէր գիշերայն ի գոռալոյ զինուորացն։ Ղուկուղղոս խառնէր աղերս պաղատանաց ընդ խոստմունսն. այն իմն էր վիշտ նորա, զի փառք նորա եղանէր ողջոյն ըստ ձեռն։ Հուսկ ուրեմն որպէս դատապարտեալ ի մահ՝ յանձն առ հարկանել փող դառնալոյ յետս, ևած զզօրսն ընդ այլ ճանապարհ և ոչ ընդ որ եկեալն էր, դառնալ ի Միջագետս։

Անդ ամառն էր տակաւին, և Հոռոմայեցիք դիպող համարե-

ցան զայն ի պաշարել զՄծբին, որ մի միայն վայրն էր ընդ ձեռամբ Տիգրանայ ի հարաւոյ Տիգրիսի։ Քաղաքն էր ամուր յոյժ. ունէր պարիսպս երկուս յաղիւսոյ թանձունս, անջրպետեալս ի միմեանց խրամով, և մանաւանդ հրամանատար, որ արժէր ողջոյն բանակ մի,—Կալիմաքոս, ճարտարապետ քաջ։ Ձմեռն ողջոյն Մծբին զդէմ կալաւ յարձակմանցն Ղուկուղղեայ։ Իբրև սկսան աւուրք ձմերայնոյ՝ բերդապահքն լուծան լքան։ Ցանկարծուստ յարձակումն որ եղև ի գիշերի մինչդեռ մրրիկ էր՝ արար զՀռոմայեցիս տէր պարսպին արտաքնոյ. պահակապանքն ըմբռնեալք ի քուն՝ խողխողեցան. խրամն լցաւ մացառօք, և երկրորդ պարիսպն որ չէր կարի ամուր՝ առաւ նոյնպէս։ Գուրաս, եղբայր Տիգրանայ, որ ամրացեալ էր ի միջնաբերդն՝ եղև անձնատուր դաշամբ, և եգիտ մարդասիրութիւն. այլ Կալիմաքոս, ընդ որում ոխ մեծ ունէր Ղուկուղղոս՝ արկաւ ի շղթայս իբրև չարագործ։ Աւարն էր այնպէս առատ, որպէս ի Տիգրանակերտ (Աշուն 68)։

Առն Տիգրանակերտի եղև վերջինն ի յաջողութեանց Ղուկուղղեայ։ Վաղ իսկ սկսեալ էր բախտն փոփոխել, և ձախողանք գային կուռ զմիմեանց կնի այնպէս արագ, որպէս կանխաւ յաղթութիւնքըն։ Իսկ և իսկ յետ մեկնելոյ Հռոմայեցւոց զկնի ճակատուն Արածանւոյ՝ դաշնաւորքն եդին ի մտի գալ ի վէգ։ Միհրդատ գումարտակաւ 8,000 արանց, որոց չորք հազարքն էին ի Հայոց՝ ձեռն արկ նուաճել միւսանգամ զՊոնտոս։ Տիգրան կալաւ վերստին զբազում գաւառս ի հիւսիսոյ Տիգրիսի և պաշարեաց զօրաբաժին մի Հռոմայեցւոց, զատուցեալ ընդ ձեռամբ Լ. Փաննեայ։ Ղուկուղղոս առեալ էր զՄծբին, յորժամ առ զհամբաւ վտանգելոյ տեղակալին իւրոյ. աճապարեաց երթալ նմա ի թիկունս, և եհաս ի ժամու զերծուցանել զնա. այլ մինչ հեռին էր նա՝ սատահակեցաւ զօրն որ առ Մծբնաւ։

Ղուկուղղոս յուղի անկեալ դառնալոյ յետս՝ ընկալաւ զհամբաւ յաջողութեանցն Միհրդատայ ի Պոնտոս։... Թագաւորն Ատրպատականի, փեսայ Տիգրանայ, եմուտ ի Կապադովկիա վաշտիւք հեծելոցն, և առնէր այրեացաւեր զերկիրն և սատակէր զմանր մանր զօրաբաժինս Հռոմայեցւոց ցրուեալս յաշխարհին։ Ինքն Տիգրան յետ հնազանդելոյ զՀայս՝ պատրաստէր անցանել ընդ Եփրատ։... Ղուկուղղոս չեղև յուսահատ. ջանայր գոնեայ լինել արգել միաւորելոյ երկուց թագաւորացն։ Խաղայր ի վերայ Տիգրանայ. կարծէր յանկարծ ի վերայ հասանել զօրուն Հայոց պարտասելոյ յաշխատութենէ ճանապարհին։ Լեգէոնք նորա ի սկզբան թուէին անսալ նմա. այլ հասեալք ի կիցս ճանապարհացն, որ տանէին յԵփրատ կոյս

և ի Գաղատիա՝ կալան նոքա լռութեամբ զճանապարհն արևմտից, դարձուցեալ զթիկունս իւրեանց առ Թշնամին։ Ղուկուղղոս յուսաբեկ յուսակտուր յածէր այսր անդր ի զօրուն, համբուրէր զձեռս զօրագլխացն ստահակելոց, յաղերս անկեալ և յարտասուս հարեալ. սակայն չգոյր ոք որ անսայր։... Զայնու ժամանակաւ Տիգրան (Պլուտ. Ղուկ. Լե. 7), ըստ Ապպիանու (Միհր. 91) Միհրդատ ևս՝ քանդէին, գերփէին զԿապադովկիա. հէքն Արիոբարզանէս հալածեալ ի Թագաւորութենէն այս վեցերորդ անգամ՝ բողոք բառնայր ի զուր։... Այսպէս յետ ութնամեայ սաստիկ պատերազմացն իրքն եկին հասին՝ ուստի լեալ էր սկիզբն։ Մեծամեծ յաղթութիւնք Ղուկուղղեայ ունայնացան իբրև զերազ։ Հռոմէական արծուիք այնպէս արագ, որպէս եկեալն էին՝ դարձան յետս յԵփրատայ ի Տաւրոս, ի Տաւրոսէ՝ յԱղիւս։... Պատճառք այս ամենայն ձախողութեանց Հռոմոց՝ էին յանդգնութիւնն Ղուկուղղեայ, անպիտանութիւն զօրավարաց նորա, ստահակութիւն զօրուն։...

Որպէս ամենայն արքունիք արևելից, ուր բազմակնութիւն հեղձուցանէ զազգեցութիւն բնութեան՝ նոյնպէս և արքունիք Հայոց մատնեալ էին առտնին խռովութեանց։ Տիգրանայ էին որդիք երեք ի կնոջէն իւրմէ սիրելւոյ ի Կղէոպատրայ, ի դստերէն Միհրդատայ։ Ոչ մին ի նոցանէ կամեցաւ սպասել մահուան Թագաւորին ծերոյ, և ոչ մին եկեաց առ նովաւ։ Երէցն Զարիադրէս, գործեաց դաւ զառաջինն հանդերձ հայ նախարարօք ոմամբք, որ չէին հաճ ընդ Թագաւորին (Վաղեր. Մաքս. Թ. 11)։ Զարիադրէս անկաւ ի ճակատու, այլ օրինակ նորա ոչ իւիք վհատեցոյց զերկրորդն։ Ցաւուր միում անկաւ Թագաւորն ի ձիոյ յորսի. որդւոյն Թողեալ զնա կիսամահ՝ եդաւ զԹագն։ Երրորդ որդին, մանուկն Տիգրան, մնաց առ ծերունւոյն վիրաւորելոյ և տարաւ նմա խնամ մեծաւ փութով։ Ուշաբերեալ Թագաւորին և իմացեալ զոր արարին որդիքն՝ զմիոյն ետ հատանել զգլուխն, և միւսում ետ վարձս՝ խոստացեալ նմա զգահն։ Այլ մոլեգին կարիք և անսանձ ցանկութիւն փառաց մայրենի հաւուն վառէին յանձին պատանւոյն որպէս և յեղբարս նորա։ Իբրև ետես նա զհայրն ի խորս անդ Կապադովկացւոց՝ ընկէց զզիմակն և եկաց յետս։ Լուեալ Տիգրանայ զբօթն՝ աճապարեաց գալ յերկիր իւր հանդերձ զօրօքն։ Ի պարտութիւն մատնեալ ապստամբին՝ անկաւ իւրովք գործակցօքն առ արքայն Պարթևաց, զորոյ զդուստրն առեալ էր կին։

Ոչինչ ընդհատ ի Միհրդատայ և ի Տիգրանայ՝ վիշտ վտանգի էր Հռոմայեցւոց ի հինից (Միջերկրական ծովուն)։ Ցորչափ շատանային նոքա աւերելով զտորմիղսն պատերազմի, առնուլ յաւարի

զքաղաքս և զմեհեանս Ցունաց կամ ածել զբռամբ զարս ռւադս հռոմայեցիս առ ի պահանջելոյ փրկանս վասն ազատութեան նոցա՝ ժողովուրդն Հռոմայ ծիծաղէր իմն զհնարիւք նոցա և համբերէր վնասուցն զոր կրէին նահանգք, Թէպէտև ի նախատինս Հռոմայ. այլ եկին աւուրք, զի հողագործք իտալացիք տարեալ եղեն վտարանդի յանդոց իւրեանց, ճանապարհորդք լինէին կալաւ կողոպուտ ի պողոտային Ապպեայ, և հատաւ հաղորդութիւն ի մէջ Սիկիղիայ և Ափրիկէի, երկուց շտեմարանաց Հռոմայ, և գինք ցորենոյ բարձրացան անհնարին։ Ցայնժամ ժողովուրդն սկսաւ բողոք բառնալ Թէ Սով է, սով, և արկանէր, ոչ յանիրաւի՝ զվնասս չարեացն և զամօԹոյն զծերակուտիւն։ Այլ յամէ անտի 69 ծերակոյտն եդ ի մտի առնել դարման իրացն։... Ի սկզբանն ամին 67, Ա. Գաբինիոս հազարապետ ժողովրդեան՝ առաջի արկ անուանել նոր ծովապետ անուամբ, այլ արդեամբ հրամանատար ծովու և ցամաքի։ ԸնտրուԹիւն ծովակալին Թողաւ ծերակուտին, այլ անուն նորա յամենեցուն բերանս էր։ Այրն էր Պոմպէոս, յաջողագոյնն և սիրելին քան զամենեսին ընկերհաշտութեան, ուստի և հասարակաց վճիռն եւ, և Պոմպէոս առ զհրամանատարուԹիւնն։... Պոմպէոս յետ ձմերելոյ 67—66 ի Կիլիկիա՝ սկիզբն առնէ բանագնաց լինելոյ ընդ Միհրդատայ (Դիոն Կաս. ԼԶ. 45)։ Տիգրան էր զբաղեալ յաշխարհին իւրում։ Միհրդատ ջանայր զիւրև ածել զՊարԹևս, այլ հրեշտակք Պոմպէի կանխեցին քան զնորայսն, և խոստմունք Հռոմայեցւոյն և Թախանձանք կրտսերոյն Տիգրանայ, փեսային Հրահատայ՝ յաղԹեցին։ Հրահատ միամտուԹեամբ հաւատայր Պոմպէի, որ խոստանայր նմա զօգնականուԹիւն նիզակակցուԹեան և սահման նմա՝ զԵփրատ գետ։... Մինչ Պոմպէոս խաղայր ի վերայ Միհրդատայ՝ Հրահատ վստահ ի դաշինսն, որ եղեն նորա ընդ Պոմպէի բանիւ և եԹ՝ արշաւէր ի Հայս պատճառանօք ածելոյ անդր զփեսայ իւր զկրտսերն Տիգրան։ Հայք հարան ամենայն ուրեք. ծերունին Տիգրան խոյս ետ ի լերինս, և ՊարԹևք գտին մուտ մինչև ի պարիսպս անդր մայրաքաղաքին Արտաշատու։ Անդ զկայ առնոյր յաջողուԹիւն նոցա։ Կարքեդոնն Հայոց, շինեալ ի սարաւանդակի միում Աբարատայ, պատեալ յերեցունց կողմանց յԵրասխայ, և ի չորրորդէն ամուր պատուարաւ՝ խիզախէր ընդդէմ աղեղնաւորացն, որ անվարժք էին յարուեստին պաշարման։ Տաղտկացեալ ի կռուելոյ՝ Հրահատ ի մերձենալ ձմերայնոյն խաղացոյց զմեծ մասն զօրուն իւրոյ յայնկոյս Տիգրիս գետոյ, Թողեալ մանկանն Տիգրանայ ստէպել զքաղաքն լինել անձնատուր։ Այն ինչ մեկնեալ էին ՊարԹևք՝ գայր հասանէր ծերունի Թագաւորն և ապաւինեալ ի հաւատար-

մութիւն հպատակաց իւրոց՝ ջախջախէր այս երկրորդ անգամ զօրդին իւր ապստամբ։ Մանուկն Տիգրանած զմտաւ զառաջինն անկանել ի գիրկս Միհրդատայ, և կալաւ զճանապարհն Պոնտոսի. այլ զկիսով ճանապարհին իմացեալ զբեկումն հաւուն իւրոյ և յանկարծ փոխեալ զմիտսն՝ չոքաւ ի բանակ անդր Հռոմայեցւոց առ Պոմպէոս, խոստացեալ լինել նմա առաջնորդ յարշաւանին ի Հայս։... Ի տալ խոյս Միհրդատայ անդր քան զձորոխ յետ վերջին ձախող ճակատուն ընդ Պոմպէի՝ զօրավարն հռոմայեցի կալաւ զՀայս առանց ճակատու պատերազմի։ Յականց անտի Եփրատայ էջ ի հովիտ անդր Երասխայ, և խաղայր դէպ ուղիղ ի վերայ Արտաշատու առաջնորդութեամբ մանկանն Տիգրանայ։ Ոչ ոք լինէր նմա դիմակալ։ Հընգետասան հրասախաւ հեռի ի մայրաքաղաքէն ծերունին Տիգրան յանդիման լինէր առ դրան ճամբարին Հռոմոց, և գայր անկանել յոտս Պոմպէի իբրև աղաչաւոր։ Ընկալաւ զնա պատուով զօրավարն հռոմայեցի և եցոյց նմա գութ մեծ։ Արդարև եհան ի նմանէ որչափ ինչ տեղիս նուաճեալ էր նա արտաքոյ աշխարհին Հայոց, զպտուղս բազմամեայ պատերազմաց նորա, և արկ ի վերայ նորա տուգանս իբրև 60,000 քանքարոյ, այլ եթող նմա զՀայաստան, և ընկալաւ զնա ի թիւ բարեկամաց և դաշնաւորաց հռոմէական ժողովրդեան։

Մնայր յանգ հանել զիրս Տիգրանայ մանկան։ Եթէ էր սորա յուսացեալ ընդունել զթագն ի ձեռաց Պոմպէի՝ խաբեալ էր զանձն անհնարին։ Ի վարձ մատնութեան նորա տուաւ նմա դոյզն գաւառըն Ծոփաց (հանդերձ Կորդուօք, ըստ Ապպիանու, որ դնէ յետոյ անցեալ զամենայն առ Արիոբարզան արքայ Կապադովկացւոց, այլ չէ հաւանութեան), և պահանջեցաւ ևս ի նմանէ՝ տալ ի ձեռս զամուրս գանձուց գաւառին իւրոյ ի հատուցանել զգինս փրկանաց հօրն։ Թոռնն Միհրդատայ ըմբոստացաւ, զի ապախտիս մեծ զպարգևն համարէր. նա խրոխտացաւ իսկ այնպէս ընդդէմ Պոմպէի՝ մինչև արկանել զօրավարին զնա ի շղթայս։ Արդարև բռնաբարութիւն էր այս իրաւանց ազգաց և թշնամանք առ արքայն Պարթևաց, որ խնդրէր զազատութիւն փեսային իւրոյ. այլ յայսմ ևս եղև Պոմպէոս յետ յաղթութեանն ամբարտաւան այնչափ՝ որչափ յառաջն լեալ էր մեղմ և զգօն և առատ ի խոստանալ։ Հակառակ բողոքանացն Հրահատայ՝ մանուկն Տիգրան, կին նորա և որդիք առաքեցան ի Հռոմ ի հանդէս ձաղութեանն Պոմպէի»։ Րէյնաք, Միհրդ. Եւպատոր։

**13.** Հաճեցունելու համար ազգային աւանդութիւն մը, թէև վկայաբանական՝ յիշենք հոս կէտ մի Հայոց դարձին պատմութենէն,

որ կարէ նաև իբրև ի հանդէս համարուիլ Տիգրանայ դաշնակցութեանն ընդ Միհրդատայ յարշաւանս այս վերջնոյն յարևմուտս ընդդէմ Հռոմայեցւոց։ Արդէն յիշեցինք, թէ ի դաշնակցութեանն Տիգրանայ ընդ Միհրդատայ պայման դրուած էր՝ թողուլ նուաճեալ երկիրներն Միհրդատայ, իսկ զաւարն՝ Տիգրանայ։ Ըստ Ագաթանգեղոսի՝ յայլևայլ տեղիս Հայոց, մանաւանդ յարևմտեան կամ ի սահմանս Պոնտոսի, կային յունական դից պատկերներ, զորս ջնջեց Լուսաւորիչ։ Ագաթանգեղոս կը յիշէ այս չաստուածներն հայերէն կամ արևելեան դիցաբանութեան անուններով—Անահիտ, Տիւր դիք, Արամազդ, Նանէական դիք, Միհր, Վահագն, Աստղիկ, որք ի Խորենացւոյն կը կոչուին յունական անուամբք—Արտեմիս, Ապողոն կամ Հերմէս, Դիոս, Աթենաս, Հեփեստոս, Հերակղէս, Ափրոդիտէ։ Ագաթանգեղոս չպատմեր, թէ երբ կամ ուստի և կամ յո՛յր ձեռն եկած էին այն պատկերք ի Հայս, սակայն համառօտ դիցաբանական մեկնութենէն, զոր կը յարէ ցուցնելու համար այն աստուածոց պաշտօնը կամ ազգաբանութիւնը—այսինքն թէ Տիւր դիք (Ապողոն) էր «երազացոյց երազընդհան», իմա պատգամատու կամ յայտնիչ գաղտնեաց, և «գրիչ ուսման ճարտարութեան», այն է գլուխ Մուսայից, կամ ուսման և դպրութեան պէսպէս ճիւղերուն, թէ Արամազդ (Դիոս) էր հայր աստուածոց, Նանէ (Աթենաս)՝ դուստր Արամազդայ, ըստ առասպելին ծնեալ յուղղոյ նորա, Միհր (Հեփեստոս)՝ որդի նորին Արամազդայ—կը տեսնուի թէ հեղինակն Ագաթանգեղոսի կը ճանչնար այս աստուածոց յունական ծագումը։ Ահա բուն բանք Ագաթանգեղոսի։

«Անդէն վաղվաղակի թագաւորն ինքնիշխան հրամանաւն և ամենեցուն հաւանութեամբ գործ ի ձեռն տայր երանելւոյն Գրիգորի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն և զիւր կարծեալ աստուածսն, չաստուածս անուանեալս՝ անյիշատակս առնել, ջնջել ի միջոյ։ Ապա ինքն իսկ թագաւորն խաղայր ամենայն զօրօքն հանդերձ ի Վաղարշապատ քաղաքէ՝ երթեալ յԱրտաշատ քաղաք, աւերել անդ զբագինսն Անահտական դիցն, և որ յԵրազամոյն տեղին անուանեալ կարդայր։ Նախ դիպեալ ի ճանապարհի երազացոյց երազընդհան պաշտաման Տիւր դից, դպրի գիտութիւն քրմացն, անուանեալ դիւան գրչի Որմզդի ուսման ճարտարութեան մեհեան. Նախ ի նա արկեալ ձեռն՝ քակեալ այրեալ աւերեալ քանդեցին։… Ապա երթայր հասանէր ի Դարանաղեաց գաւառն, զի և անդ զանուանելոցն զսուտ աստուածոցն զբագինսն կործանեսցեն. որ էր ի գեւղն Թորդան, մեհեան անուանեալ սպիտակափառ դիցն Բարշամինեայ։… Ապա երթեալ հասանէր յամուր տեղին յանուա-

նեալ յԱնի, ի թագաւորական կայեանսն հանգստոցաց գերեզմանաց թագաւորացն Հայոց։ Եւ անդ կործանեցին զբագինսն եւ դիցն Արամազդայ, հօրն անուանեալ դիցն ամենայնի։... Յետ այսորիկ անդէն ի սահմանակից ի գաւառն յԵկեղեաց ելանէր... ի մեծ և ի բուն Հայոց թագաւորացն ի տեղիս պաշտամանցն, յԱնահտական մեհենացն յԵրէզն աւանին.... փշրէին զոսկի պատկերն Անահտականաց դիցն... Եւ անտի ընդ գետն Գայլ յայնկոյս անցանէին. քանդէին զՆանէական մեհեանն դստերն Արամազդայ ի Թիլն յաւանի։... Ապա փութացեալ հասանէր ի գաւառն Դերջան... ի Մհրական մեհեանն անուանեալ որդւոյն Արամազդայ, ի գեւղն զոր Բագայառիճն կոչեն ըստ պարթեւարէն լեզուին։... Լուաւ Գրիգորիոս, թէ Վահէվահեան մեհեանն մնացեալ է յերկրին Տարօնոյ, մեհեանն մեծագանձ, լի ոսկւով և արծաթով, և բազում նուէրք մեծամեծ թագաւորաց ձօնեալ անդ, ութերորդ պաշտօն հռչակեալ, անուանեալն վիշապաքաղն Վահագնի, յաշտից տեղիք թագաւորացն Հայոց մեծաց, որ և անուանեալ ըստ յաճախ պաշտաման տեղեացն՝ Յաշտիշատ. զի յայնժամ եւս դեռ չէն կային երեք բագինքն ի նմա. առաջին՝ մեհեանն Վահէվահեան, երկրորդ՝ ոսկեմօր ոսկեծին դից (բուն Անահիտն Հայոց), և բագինն իսկ յայս անուանեալ՝ ոսկիհատ ոսկիամօր դիցն, և երրորդ մեհեանն անուանեալ Աստղկան դից, սենեակ Վահագնի կարդացեալ ըստ յունականին, որ է ինքն Ափրոդիտէս» (Ագաթ. ՇԸ —ՇԺԴ)։

Ագաթանգեղոսի «ութերորդ» բառը պէտք չէ առնուլ զՎահագնէ՝ որպէս թէ ութ տեղ պաշտօն ունէր Վահագն ի Հայս։ Չիք ուրեք յիշուած ի հին պատմութեան մերում, ոչ առ Ագաթանգեղոսի և ոչ առ Բուզանդայ և Խորենացւոյն՝ ուրիշ պաշտօնատեղի Վահագնի բաց յԱշտիշատայ։ Ագաթանգեղոս կամի ասել, թէ Աշտիշատ էր ութերորդ պաշտօնատեղի ի Հայս։ Արդարեւ ութ տեղիք էին, յորս կը մատուցուէր պաշտօն դից ի Հայս առ Գրիգորիւ ի սկզբան դարձին Հայոց—Արտաշատ, Բագաւան, Անի, Երիզա, Թիլ, Թորդան, Բագայառիճ և Աշտիշատ։

Հաւանական է ուրեմն, թէ այս ամենայն դիք, յունական դիցաբանութեան ամբողջ Պառնասն՝ վաղուց կար ի Հայս յառաջագոյն քան զՏրդատ և զԼուսաւորիչն։ Կը մնայ գիտել, թէ եթէ այն պատկերք, ինչպէս հաւանական է, բերուած էին ի Յունաց—քանզի Հայք ի բնէ կրօնիւք զրադաշտական, անտգան ուրեմն ընկալան դիցապաշտութիւնն յարեւմտեան դրացեաց իւրեանց Կապադովկացւոց—երբ բերուեցան և յո՛յր ձեռն։ Խորենացին կը դնէ բերուած առ Արտաշիսիւ ոմամբ, զոր կը համարի հայր Տիգրանայ

մեծի։ Արտաշէս որպէս թէ անթիւ զօրօք կ'արշաւէ յարեւմուտս մինչեւ ի Յունաստան եւ աւար առնլով այն պատկերներն՝ կը ղրկէ ի Հայս։ Ահա Խորենացւոյն պատմութիւնն ըստ բնագրին։

«Յայնժամ Հրաման տայ Արտաշէս զօր յարուցանել յարեւելից եւ ի հիւսիսոյ բազում յոյժ, մինչեւ ոչ գիտել նմա զհամարն, այլ յանցս եւ լիջեւանս քար ըստ մարդաթուի կարկառ՝ նշան բազմութեանն թողուլ։ Խաղայ յարեւմուտս... եւ գտեալ յԱսիա զպղնձաձոյլ ոսկեզօծ պատկերս զԱրտեմիդեայ եւ զԱպողոնի՝ տայ բերել յաշխարհս մեր, զի կանգնեսցեն յԱրմաւիր։ Զոր առեալ քրմապետացն որ էին յազգէ Վահունեաց՝ զԱպողոնին եւ զԱրտեմիդայն կանգնեցին յԱրմաւիր. իսկ զՀերակլեայն զառնապատկերն, զոր արարեալ էր ի Սկիւղեայ եւ ի Դիպինոսէ Կրետացւոյ (անդրիագործք զորս կը թուին ակնարկել Պլինիոս եւ Կեդրենոս), զՎահագն իւրեանց վարկանելով նախնի (կը թուի Վահունիք կը կարծէին զանձինս սերեալ ի Վահագնէ)՝ կանգնեցին ի Տարօն յիւրեանց սեպհական գեւղն Աշտիշատ, յետ մահուանն Արտաշիսի։ (Տես եւ յԱ. մասին Պատմութեան մերոյ, էջ 218, 219)։

«Բայց—կը յաւելու Խորենացին—եւ յԵլլադայ առեալ պատկերս զԴիոսի, զԱրտեմիդայ, զԱթենայ, զԵփեստու, զԱփրոդիտեայ՝ տայ բերել ի Հայս. որ ոչ ժամանեալ միջամուտ լինել յաշխարհս՝ լսեն զբօթ մահուանն Արտաշիսի. եւ փախուցեալ ընկենուն զպատկերսն յամրոցն յԱնի, եւ քուրմք զնոցին զհետ լինելով՝ դադարեն առ նոսա»։

Խորենացին ԺԴ. գլխոյն մէջ Արտաշիսի որդւոյն Տիգրանայ կուտայ զետեղել այն պատկերներն յայլեւայլ տեղիս.—«Յետ Արտաշիսի առաջնոյ թագաւորէ Տիգրան որդի նորա... Եւ ժողովեալ զզօրս Հայոց՝ ընդդէմ երթայ զօրացն Յունաց, որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ եւ ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր։ Որոց ընդդէմ պատահեալ Տիգրանայ՝ արգելեալ ի վերջ նահանջէ.... եւ դառնայ յաշխարհս մեր.... Իսկ քըրմացն որ եկեալ էին ի Յունաց, զմտաւ ածեալ զի մի՛ ի խորագոյն Հայս վարիցին՝ պատճառեցան բղձութիւնս, իբր թէ դիքն անդէն կամիցին զբնակել։ Որում հաւանեալ Տիգրան՝ կանգնեաց զողոմպիական պատկերն Դիոսի յամուրն յԱնի, եւ զԱթենաս ի Թիլ, եւ զԱրտեմիդայ զմիւս պատկերն յԵրիզա, եւ զԵփեստոն ի Բագայառինջ։ Բայց զԱփրոդիտեայ զպատկերն իբրեւ Երակղեայ տարփաւորի՝ առ Նորին պատկերին Երակղեայ հրամայեաց կանգնել յաշտից տեղիսն։ Եւ ցասուցեալ ընդ Վահունիսն, եթէ ընդէր յիւրեանց սեպհականին իշխեցին կանգնել զպատկերն Երակղի, առաքեալ ի Նորին հօ-

րէ՝ ընկենու զնոսա ի քրմութեննէն, և զգեւղն (Աշտիշատ) յարքունիս առնու յորում պատկերքն կանգնեցան»։

Ըստ Խորենացւոյն Տիգրան յետ այս գործոց կ'իջնէ ի Միջագետս (ինչպէս կ'երեւի՝ ակնարկելով Տիգրանայ Ասորւոց տիրելը, զոր չգիտեր Խորենացին), և գտնելով անդ Ասորւոց Բարշամին անուն աստուծոյ ուրուք պատկերն ի բիւրեղէ, ի փղոսկրէ և յարծաթոյ՝ կու տայ տանել ի Հայս և կանգնել ի Թորդան։ Այս է Բարշամինիայն Ագաթանգեղոսի, սպիտակափառն, ինչպէս հաւանական է՝ այսպէս կոչուած վասն բիւրեղին, փղոսկրոյ և արծաթոյ, որ տեսիլ իմն սպիտակ փայլուն կ'ընծայէին պատկերին։ «Ապա ինքն (Տիգրան) իջանէ ի Միջագետս, և գտեալ անդ զԲարշամինայ զպատկերն, զոր ի փղոսկրոյ և ի բիւրեղէ կազմեալ էր արծաթով՝ հրամայէ տանել կանգնել ի Թորդան» (Խոր. Բ. ԺԴ.)։ Լուսաւորիչ այս պատմութեան համեմատ գտաւ բոլոր այս կուոց պատկերները ճիշդ Ագաթանգեղոսէ նշանակեալ տեղերն ըստ պատմութեան նորին Ագաթանգեղոսի, որպէս տեսաք վերագոյնն։

Արտաշիսի և Տիգրանայ արշաւանին վրայ հանգերձ մանր մասամբ խօսուած է այլուր (Ա. մասն, էջ 265—268)։ Հոս սա միայն կը յաւելունք համառօտիւ, թէ յառաջ քան զՏիգրան և զՄիհրդատ, այն է յառաջ քան 90 նախ քան զՔր.՝ յարեւելից յարեւմուտս արշաւանք Փոքուն Ասիոյ և Յունաց վրայ եղած չէ և չկարէր լինել։ Բոլոր այն երկիրներն էին ընդ վերին իշխանութեամբ Հռոմայեցւոց, և նախորդք Տիգրանայ չունէին ոչ պատճառ և ոչ զօրութիւն յարձակելոյ, մանաւանդ առանձինն, Հռոմայեցւոց վրայ. նախ Միհրդատ ծնաւ այս խորհուրդը, և այն յետ 90-ին, ինչպէս յայտնի է մեր նախընթաց պատմութիւննէն։ Ուստի ստուգութեամբ կրնանք ըսել, թէ այն պատկերք իբրեւ աւար յԱսիոյ և ի Յունաց բերուած են ի Հայս, եթէ երբէք բերուած են՝ յարշաւանին Տիգրանայ և Միհրդատայ։

Ագաթանգեղոսի հեղինակն հաւանականապէս վկայաբանութենէ ուստեք կ'առնու, թէ այն դից արձանները կային ի Հայս այլեւայլ տեղեր, և թէ Լուսաւորիչ անհետ ըրաւ զնոսա. սակայն խնդիր է, թէ Խորենացին ուստի առաւ։ Խորենացին իւր առաջին աղբիւրը Մարիբաս բերելով մինչև ի վախճան թագաւորութեանն Վաղարշակայ՝ յաջորդաց նորա Արշակայ և Արտաշիսի պատմութեան իբրեւ աղբիւր կը յիշէ զԱփրիկանոս, որպէս թէ իսկ և իսկ զկնի Մարիբասայ կ'սկսի առնուլ այս անուանի ժամանակագրէն։ Բայց չէ հաւանական, թէ Արշակայ և Արտաշիսի և Յունաց պատկերներուն աւարառութեան և բերուելով զետեղուելուն ի Հայս այն երկար և մանր

պատմութիւնը կրնար գտնուիլ ի ժամանակագրութեանն Ափրիկանոսի, և ոչ՝ թէ Խորենացին ունեցաւ երբէք զԱփրիկանոս։ (Զայսմանէ ևս տես յառաջնում մասին Պատմութեան մերոյ, էջ 265, 266)։ Խորենացւոյն պատմութեանն զպատկերաց հաւատական գաղտնիքն այս է։ Խորենացին, որ ինչպէս յայտնի է իւր պատմութենէն, շատ աղօտ և հարևանցի տեղեկութիւն ունի Հռոմայեցւոց պատմութեան, ուստի և Տիգրանայ պատերազմներուն ընդ նոսա թէ Միհրդատայ հետ և թէ առանձին՝ ինչպէս ըսինք, այս երկու թագաւորաց յարձակումներն յարևմուտս կոյս Հռոմայեցւոց դէմ՝ կ'ընծայէ կարծեցեալ Արտաշիսի, Տիգրանայ հօր աշխարհակալութեան ոգւոյն, և պատմութիւնը կը ձևէ ըստ պատմութեան արշաւանաց Աքեմենեանց, Կիւրոսի և յաջորդաց նորա Դարեհի և Քսերքսի, ի վերայ Յունաց։ (Տես Ա. մասն Պատմութեան մերոյ, էջ 265, 266)։ Եւ որովհետև կը կարդայ յԱգաթանգեղոսի յոյն ճարտարաց նշանաւոր դից պատկերներ լինել ի Հայս՝ կը համարի զնոսա այն արշաւանաց ժամանակ իբրև աւար բերուած ի նմին Արտաշիսէ, և զետեղուած յորդւոյ նորա Տիգրանայ այն տեղերն, ուր գտաւ զնոսա Լուսաւորիչ և ջնջեց։ Հոս ներուի մեզ ընել սա դիտողութիւնը։ Եթէ ի միոջէ կողմանէ, յեցեալ ի վկայութիւն Խորենացւոյն, ընդունինք, թէ առաջին Արշակունիք (Արտաշէս, Տիգրան կամ ո՛ ոք և է) լցին զՀայս Յունաց գեղարուեստին երևելի գործուածներով՝ միւս կողմանէ, յեցեալ ի վկայութիւն Ագաթանգեղոսի՝ պարտիմք ընդունել, թէ քրիստոնէական չափազանց իմն եռանդն ջնջեց կորոյս հին արուեստին այն երևելի մնացորդներն։

**14.** Գիտել պարտ է սակայն, թէ Հայք յառաջագոյն իսկ քան զՏիգրան ունէին ուրիշ պատկերներ, մանաւանդ Անահտայ, որ կը թուի լեալ ազգային աստուած։ Տրդատ կ'անուանէ զԱնահիտ «փառք ազգիս մերոյ և կեցուցիչ» (Ագաթ. Ե.), և այլուր (Զ.), «Մեծն Անահիտ, որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց»։ Ստրաբոն ի խօսելն զդից Հայոց՝ զԱնահիտ համարի գլխաւոր աստուած.—«Ամենայն դիք Պարսից, ասէ, անխտիր պատուին ի Մարաց և ի Հայոց. բայց Անահիտ է մանաւանդ զոր պաշտեն Հայք առանձինն, ունէին նմա կանգնեալ մեհեանս յայլևայլ տեղիս, մանաւանդ յԵկեղեաց»։ Աշտիշատու Անահիտն մանաւանդ թուի թէ կար ի վաղուց։

**15.** Դիցապաշտութիւնն, որ առաւել քան յայլ գաւառս Հայոց յարևմտեան մասին էր ծաղկեալ՝ էր նման, թերևս և դուստր պաշտամանց Կապադովկիոյ և Պոնտոսի, որպէս է տեսանել ի Ստրաբոնէ։ Յայսմ նմանութենէ և յայլոց, որ կային ի մէջ արևմտեան մասին Հայոց և վերոյիշեալ սահմանակից գաւառաց, թելադրեալ՝

կրնայինք թերևս համարել պատմական զաւանդութիւնն նուաճելոյ Արամայ ուրումն Հայոց թագաւորի վաղ ժամանակաւ, ըստ Խորենացւոյն, զարևմտեան կողմանս Մեծին Հայոց և տալ բնակչացն խօսել հայերէն՝ եթէ չունէինք Ստրաբոնի վկայութիւնը, թէ արևմտեան գաւառք Հայոց, որպէս Եկեղեաց, Կարին, Դերջան և այլ ևս գաւառք որ շուրջ զնոքօք՝ էին ի սկզբան Կապադովկացւոց և այլոց սահմանակից ազգաց, և նուաճեալ աստ ուրեմն առ առաջին Արշակունեօք՝ առին զլեզու նոցա.—«Արտաքսիաս և Զարիադրէս... հանին ի Խաղտեաց և ի Մոսինեքաց զԿարին և զԴերջան, և ի Կատայոնացւոց՝ զԵկեղեաց և զամենայն կողմն Անտիտաւրոսի, գաւառք, որ այսր միութեան աղագաւ խօսին այժմ զմի և զնոյն լեզուն» (Ստր. ԺԱ. 14. 5)։ Կապադովկիա, կամ Գամիրք ըստ Հայոց, կը կոչուէր ի սկզբան, որպէս ասէ Ստրաբոն՝ բովանդակ արևմտեան սահմանակից երկիրն Հայոց, երկիր ընդարձակ, որ իբրև երկայն իմն պարանոց ձգեալ ի ծոցոյն Իսոսի (Կիլիկիա) մինչև ի հարաւային արևելեան ծայր Եւքսինոս ծովու՝ կը բաժնէր զթերակղզին Փոքուն Ասիոյ ի բուն ի մեծէն Ասիոյ։ «Կապադովկացիք, ասէ Ստրաբոն, ի սկզբան էին երկու ազգք ուրոյնք ի միմեանց և՛ տոհմիւ և՛ լեզուաւ։ Նախնիք ի թուելն զազգս այնր մասին Ասիայ՝ յետ Կապադովկացւոց դնեն զԿատայոնացիս, և զկնի Կատայոնացւոց զժողովուրդս որ յայնկոյս Եփրատայ, թէպէտև ոչինչ խտիր տեսանեմք այսօր, ո՛չ ի բարս և ոչ ի լեզուս Կատայոնաց և այլոց բնակչաց Կապադովկիայ. սակայն ստոյգ է, թէ Կատայոնք էին ուրոյն ազգ, մինչև Արիարաթ, որ զառաջինն եկաց թագաւոր Կապադովկացւոց՝ արկ զնոսա բանի ընդ իւրով իշխանութեամբ»։ Պարսք, յետ տիրելոյ Փոքուն Ասիոյ՝ բաժնեցին, ըստ Ստրաբոնի, զԿապադովկիա յերկաւս, սատրապութիւն անուամբ, որ յետոյ առ Մակեդոնացւովք եղան ուրոյն թագաւորութիւնք, Կապադովկիա մեծ և Պոնտոս։ Մօտ ի ժամանակս Ստրաբոնի՝ Հռոմայեցիք տիրելով Փոքուն և յառաջակողման Ասիոյ՝ արարին նահանգ զմեծն Կապադովկիա, որ առ Արքեղայոսիւ վերջին թագաւորաւ մեծին Կապադովկիոյ և առ նախորդօք նորա կը բաժնուէր տասն զօրավարութիւն կամ գաւառ, որոց գլխաւորքն էին Կատայոնիա, Տիանիտիս, այն է Անահտական գաւառ, Մելիտինէ և Մորիմենէ։ Առաջին երեքն էին տեղիք դիցապաշտութեան իբրև զԴարանաղին, զԵկեղեաց և զԴերջան, որոց էին սահմանակից։ Ի Կատայոնիա էր Կոմանա քաղաք, ի նեղ և ի խորանիստ հովտի գօտւոյն Անտիտաւրոսի, նուիրեալ Մա անուն աստուածուհւոյն, որ կը թուի լեալ աստուած պատերազմի, որպէս Ենիոյն Յունաց (Անգեղ, տես Ա. մասն, էջ 252,

253) և Պէլլոնայն Հռոմայեցւոց։ Առ Ստրաբոնիւ, որ ականատես էր՝ Կոմանայն Կապադովկիոյ էր ընդ իշխանութեամբ քրմապետի, որ էր երկրորդ թագաւորին և թագաւորազն, և թիւ քրմացն, կամ արանց և կանանց նուիրելոց ի պաշտօն աստուածոյն՝ էր աւելի քան զվեց հազար։ Ահա բանք Ստրաբոնի. «Ի բուն իսկ յԱնտիտաւրոս, ի հովիտս անձուկս և խորս գօտւոյն է Կոմանա, անուանի մեհենիւն նուիրելով դիցն Մա, նոյն զոր մեքն Ենիոյ կոչեմք։ Կոմանա է քաղաք նշանաւոր, բայց զիւր մեծութիւն պարտի մանաւանդ բազմութեան մոլելոց կամ ըղձից և սորկաց նուիրելոց, որ անդ բնակին։ Բնակիչք քաղաքին, թէպէտև ի բնէ Կատայոնք և ըստ անուանն ընդ իշխանութեամբ արքային Կապադովկիոյ՝ են սակայն հպատակք քրմապետին Մայայ։ Քրմապետն ունի զտեսչութիւն մեհենին։ Ցերթալ մեր յայցելութիւն մեհենին՝ թիւ սորկացն էր վեց հազար, ընդ այր և ընդ կին։ Ունի մեհեանն կալուած ընդարձակ, զորոյ զհասն և զմուտ առնու քրմապետն, որ է աստիճանաւ և բարձու երկրորդ զկնի թագաւորին, և մինչև ցարդ դրեթէ միշտ թագաւորն և քրմապետն ընտրին ի նմին տոհմէ»։ «Օրինակ պաշտաման աստուծոյն Մա — կը յաւելու Ստրաբոն — ետ կարծել, թէ Ովրեստէս յետ փախստեանն ընդ քեռ իւրում Իփիգենեայ ի Տաւրիտէ (Քրիմէ)՝ եմոյծ յայս երկիր զպաշտօն Տաւրեանն Անահտայ. աւանդութիւնն յաւելու ևս, թէ եղբայրն և քոյր ի նշան սգոյ եդին զգիսակս իւրեանց ի վերայ բագնի դիցն, և ի դիպաց աստի առ քաղաքն զանունն Կոմանա» (Ստր. ԺԲ. 2. 3)։ «Անուանի էր ի Կատայոնիա նաև մեհեանն Ապողոնի (Վահագն Հայոց), մեծարեալ յոյժ ի Կապադովկացւոց, յօրինակ այլոց պաշտօնատեղեաց, և միւս ևս մեհեան, անուանեալ Կատայոնեանն Ապողոնի, մեծարեալ ընդ ամենայն Կապադովկիա, իբրև տիպ և օրինակ այլոց նուիրական շինուածոց, որ գոն յաշխարհին յայնմիկ» (Ստր. ԺԲ. 2. 5)։ Երրորդ անուանի մեհեան էր մեհեանն Արամազդայ ի Վենասա քաղաք Մորիմենէ գաւառին։ Ի շինուածս մեհենին կը պատսպարուէին քուրմք երեք հազար, և մեհեանն ունէր կալուածս, որ կու տային տարուէ տարի հնգետասան քանքար ի սպաս քրմապետին։ «Ի նահանգին Մորիմենայ, ի Վենասա, է մեհեան Արամազդայ, յորոյ ի սահմանին դիւրին է պատսպարել երեք հազար սորկաց մեհենին, և որոյ կալուածք տան քրմապետին հասս ամի ամի հնգետասան քանքար։ Քրմապետս այս, աստիճանաւ երկրորդ զկնի քրմապետին Կոմանայ՝ է իբրև զնա ցկեանս» (Ստր. անդ)։ Ի նմին գաւառի էր միւս ևս մեհեան Արամազդայ, որոյ քրմութիւնն խոնարհագոյն էր քան զՎենասայն, կարևոր սակայն ըստ բաւակա-

նին։ «Քրմապետութիւնն մեհենին Դեկեանն Արամազդայ, երրորդ ըստ պատուոյ քրմութեան՝ խոնարհագոյն է յոյժ քան զքրմութիւնն Վենասայ, չէ սակայն դոյզն ինչ և աննշան» (Սոր. անդ)։ Ի Տիանիտիս էր Կասդաբադ քաղաք, անուանի մեհենիւն Անահտայ Պերասիայ, որ «ունի—ասէ Ստրաբոն ականատես—քուրմս կանայս, զորոց ասի թէ գնան բոկ ոտիւք ի վերայ կայծականց հրոյ անվնաս»։ «Որպէս զԱնահտայն Հայոց յԵրիզա՝ նոյնպէս զՊերասիայն Անահտայ պատմի—կը յաւելու Ստրաբոն—վէպն Ովրեստեայ և Իփիգենեայ, որոց փախուցեալ ասեն զպատկեր դիցն ի Տաւրիտայ, որպէս և անունն յայտ առնէ Պերասիա, իբրև թէ եկեալ յայնմ կուսէ ծովուն» (Սոր. Անդ)։

**16.** Այս տեղեկութիւններէն կը տեսնուի, թէ կար, գոնէ կրօնից կողմանէ, սերտ կապ անդէն իսկ առ հեթանոսութեամբ ի մէջ Կապադովկիոյ և արևմտեան մասին Մեծին Հայոց։ Այս կապ, որ յետ քրիստոնէութեան խզուած էր, կռապաշտութեան անկմամբ ի Կապադովկիա, մինչև Հայաստան կը դանդաղէր հետևել իւր քրիստոնեայ դրացւոյն՝ պնդեցաւ միւսանգամ յետ դարձին Հայոց ի քրիստոնէութիւն Կեսարիաւ, որ նշանաւոր է յեկեղեցական պատմութեան մերում կրկին գլխով, իբրև միջոց լուսաւորութեան ազգին և իբրև կեդրոն եկեղեցական իրաւասութեան, որ տևեց իբրև երկու դար։ Արդարև Գրիգոր, թէ իբրև առաքեալ և թէ իբրև քահանայապետ Հայոց՝ էր պտուղ Կեսարիոյ։ Այս երկու պատճառաւ մանաւանդ կը յիշուի Կեսարիա ստէպ ի գիրս Ագաթանգեղոսի, Բուզանդայ և Խորենացւոյն։ Յետ բառնալոյ ձեռնադրութեան կաթողիկոսաց Հայոց Կապադովկիոյ թեմէն, նախ առ Պապաւ ըստ մասին, և ապա բոլորովին առ Սահակաւ՝ Կեսարիա մոռացուեցաւ ի Հայոց. արդէն առ Եղիշէի և Փարպեցւոյն չենք գտներ յիշուած Կեսարիոյ անունը։ Քան զայլ պատմագիրս մեր Խորենացին է, որ աւելի տեղեկութիւն կուտայ մեզ զԿեսարիոյ։ Այս հայր պատմագրացն Հայոց կը համարի զԿեսարիա, այն է ըստ մեզ Մաժաք հին անուամբ՝ շինեալ առ Արամաւ, որ ըստ պատմութեան նորա իբրև առաջին աշխարհակալ հայ՝ տիրեց բովանդակ Կապադովկիոյ և Փոքուն Հայոց.—«Որ ինչ յարևմուտս կոյս ընդ Տիտանեանցն է սորա (Արամայ) գործ քաջութեան՝ ասել կայ մեզ առաջի։ Զօրիւք բիւրու հետևակաւ զօրու և երկու հազար հեծելովք հասանէ ի կողմանս Կապադովկացւոց, ի տեղի որ այժմ ասի Կեսարիա»։ Ապա յետ պատմելոյ զպատերազմն և զյաղթութիւն Արամայ՝ Խորենացին կը յաւելու. «Եւ թողեալ զոմն Մշակ անուն յազգէ իւրմէ և բիւր մի ի զօրաց իւրոց ի վերայ աշխարհին՝ ինքն դառ-

նայ ի Հայս. բայց հրաման տայ բնակչաց աշխարհին՝ ուսանել զխօսս և զլեզուս հայկական։... Եւ զգաստակերտն զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ, փոքրագունիւք պարըսպեալ որմովք՝ անուանէին հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել, մինչև յետոյ յոմանց ընդարձակագոյն շինեալ՝ անուանեցաւ Կեսարիա։ Ըստ նմին օրինակի ի տեղեացն այնոցիկ մինչև ցքուն իւր սահմանսն զբազում անբնակ երկիր ելից բնակչօք, որք Երկրորդ և Երրորդ անուանեցան Հայք, այլ և Չորրորդ» (Խոր. Ա. ԺԴ.)։ Ոչ այսչափ միայն. ըստ Խորենացւոյն Կեսարիա կը մնայ ընդ իշխանութեամբ Հայոց մինչև ի վերջին ամս Տիգրանայ.—«Զայսու ժամանակաւ թերահաւատութիւն լեալ Տիգրանայ ի պատանին Միհրդատ, չկարծելով ինքեան քուերորդի՝ չտայ նմա մասն ինչ իշխանութեան. և Միհրդատայ արհամարհութիւն կրեալ ի քեռւոյն իւրմէ Տիգրանայ՝ ապստամբութեամբ անկանի առ Կեսար... Սա (Միհրդատ որդի մեծին Միհրդատայ) շինէ զՄաժաք ընդարձակագոյն և պայծառ շինուածովք, և անուանէ Կեսարիա ի պատիւ Կեսարու։ Եւ յայնմ հետէ բարձեալ լինի իշխանութիւնն Հայոց ի քաղաքէն յայնմանէ» (Խոր. Բ. ԺԸ.)։ Զշինութենէ Մաժաքայ առ Արամաւ, ինչպէս նաև զնուաճմանէ Կապադովկիոյ և Փոքուն Հայոց կողմերուն, թէ չեն ամենևին պատմական՝ տես յԱ. մասին Պատմութեան մերոյ, էջ 151, 158, 159, ուր երկար խօսուած է զայսմանէ։ Նոյնպէս չէ ամենևին հաւանական, նա մանաւանդ հակառակ է ժամանակակից պատմութեան, թէ Կեսարիա էր ընդ ձեռամբ Հայոց, և ի վերջին ամս Տիգրանայ միայն դադարեցաւ ի վերաբերելոյ Հայոց։ Եթէ երբէք Կեսարիա և մասն ինչ Կապադովկիոյ գտնուած են ընդ իշխանութեամբ Թագաւորաց Մեծին Հայոց՝ այս եղած է առ Տիգրանաւ, և այն կարճ ժամանակ միայն, այն է ի ժամանակս պատերազմաց Տիգրանայ և Միհրդատայ ընդ Հռոմայեցիս. և զայսմ կարճ ժամանակէ պարտ է իմանալ նաև զասելն Թագաւորին Պապայ, գրելով առ կայսր, ըստ Բուզանդայ, թէ «Կեսարեաւ հետ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր» (Բուզ. Ե. ԼԲ.)։ Տեսնենք այժմ, թէ ինչ էր Կեսարիա կամ մանաւանդ Մաժաք (Մազաքա ըստ հին անուան— քանզի նոր անունն Կեսարիա կոչուեցաւ աստ ուրեմն, իբր աւելի քան կէս դար յետոյ, առ Տիբերիւ) առ Տիգրանաւ ըստ պատմութեան Ստրաբոնի, որ ոչ միայն մօտ էր ժամանակաւ, այլ և հայրենեօք այն երկրէն։

**17.** Ստրաբոն երկար կը խօսի զՄաժաքայ, զոր կը կոչէ «մայրաքաղաք Կապադովկացւոց»։ «Մաժաք մայրաքաղաք Կապա-

դովկացւոց՝ կոչի և Եւսեբիա (Կեսարիա), այլ Արգիական վերադրաւ, զի կայ առ ոտամբ Արգէոս լերին, բարձրագոյն տեղի Կապադովկիոյ, ծածկեալ մշտնջենաւոր ձեամբ, յորոյ ի գագաթանէ, ըստ պատմութեան ճանապարհորդաց, որոց դուն ուրեք յաջողի ելանել անդր՝ երևին, յորժամ պարզ և յստակ է օդն՝ երկոքին ծովք միանգամայն, Պոնտոս և Իսոս (ծոց Կիլիկիոյ)։ Սակայն չէ դիր տեղւոյն յարմար լինելոյ մայրաքաղաք, զի ոչ միայն պակասէ ջուր քաղաքին, այլ և է ամենևին իսկ անպատսպար. քանզի Նախնի Թագաւորաց Կապադովկացւոց չեղև փոյթ ածել պարիսպ զքաղաքաւն առ հեղգութեան և կամ խորհրդով, զի մի՛ բնակիչքն թիկունս արարեալ զամրութիւն պարսպացն և դիպող համարեալ զբլուրսն որ զնոքօք, յորս ոչ հասանեն նետք՝ գայցեն զաւազակութեամբ։ Յաւել և զայն ևս, զի ցամաք և անբեր է երկիրն շուրջ զքաղաքաւն, և թէպէտև դիւր և ողորկ՝ չէ յարմար ի մշակութիւն, զի է գետինն ապառած աւազուտ. թող զի սակաւ ինչ հեռի ի դաշտին թուի հուր վառեալ ընդ երկրաւ, որպէս յայտ է ի ջրհորոց հրոյ, որոց հասանէ ճանապարհորդաց պատահել յաճախ ընդ բազում ասպարէզս։ Վասն այսր ամենայնի հարկ իմն է բնակչաց Մաժաքայ տալ բերել ի հեռաստանէ՝ որ ինչ պիտոյն է ի պաշար իւրեանց։ Նա և որ աղբիւրն թուին լինել մեծութեան երկրին՝ չեն առանց վտանգի։ Որովհետև գրեթէ չիք փայտ ի համօրէն Կապադովկիա, մինչ կողք լերինն Արգեայ ծածկեալ են ընտիր ընտիր մայրեօք կաղնեաց։ Թուի իմն զառաջինն, եթէ Մաժաքացւոց գոնեա դիւրին իցէ գտանել փայտ անդէն մօտ առ իրեանս. չէ սակայն այնպէս. զի առ ոտամբ անտառացն այնոցիկ կաղնեաց՝ են ընդ երկրաւ ի ծածուկ գուբք հրոյ և ջրոյ, առանց արձակելոյ արտաքս ոչ հուր և ոչ ջուր, բայց միայն ուրեք ուրեք են մօրք, և ելանէ յերկրէ գոլորշի, որում մարթ է բոցբոցել ի գիշերի. իսկ արտաքուստ ոչ այլ ինչ է տեսանել, եթէ ոչ մարգս կանաչագեղս։ Յայտ ուրեմն է, զի եթէ հմուտք ոմանք երկրին յաջողեսցին բազում զգուշութեամբ երթալ հատանել փայտս յԱրգէոս վասն իւրեանց պիտոյից՝ բազմաց ընդ հակառակն վտանգ մեծ է անտի, գրաստուց մանաւանդ դիւրին է անկանել ի գուբսն յայնոսիկ, զորս ուստեք գուշակել չէ մարթ։ Չեն բազում ժամանակք, զի Մաժաքացիքն բազում ինչ վիշտս վտանգի կրեցին յարշաւանաց Տիգրանայ ի Կապադովկիա։ Խախտեաց զնոսա արքայն Հայոց յերկրէն իւրեանց և խաղացոյց ի Միջագետս, առնել ի նոցանէ զգլխաւոր մասն բնակչացն Տիգրանակերտի։ Այլ յետոյ, յետ առման Տիգրանակերտի ի Հռոմայեցւոց՝ որոց միանգամ կարողքն

էին՝ տուաւ հրաման դառնալ այսրէն ի բնակութիւնս իւրեանց» (Ստր.)։

**18.** Յետ Կապադովկիոյ սահմանակից էր արեւմտեան մասին Մեծին Հայոց ի հիւսիսոյ Փոքր Հայք կոչուած երկիրն, որ Եփրատաւ կը բաժանուէր ի Հայոց Մեծաց։ Արդէն յիշուած է յԱ. մասին Պատմութեան մերոյ, էջ 160, թէ զիարդ Դարեհ Վշտասպեայ, յետ նուաճելոյ զՀայս (Արարատ)՝ զերկիրն որ ի մէջ Կովկասու եւ Կորդուաց, ի Մարաց մինչեւ ի Կապադովկիա՝ Արմինիք անուամբ արար նահանգ, որ իբր եօթներորդ կը յիշուի ի սեպաձեւ արձանագրութեան նոյն Դարեհի։ Մակեդոնացիք բաժանեցին այս նահանգն յերիս—1. Մեծ Հայք, որ էր ի սկզբան Երասխայ դաշտը (Արաքսենէ) միայն, հաւանականապէս հին Արարատեան թագաւորութիւնն. 2. Ծոփք, եւ 3. Փոքր Հայք։ Առ Սելեւկեամբք, յետ Անտիոքոսի մեծի, այս երեք մասունք Արմին նահանգին եղան մէն մի թագաւորութիւն։ Արտաքսիաս եւ Զարեհադրէս, թագաւորք, մին Երասխայ, եւ միւսն Ծոփաց՝ դրացի ազգերէ երկիրներ նուաճելով ընդարձակեցին Արմինիոյ, ըստ Յունաց Արմենիոյ երկու առաջին մասերը։ Տիգրան, ի յաջորդաց Արտաքսիասայ, ընդարձակեց իւր տէրութիւնը, միացնելով զԾոփս ընդ Մեծին Հայոց. բայց Փոքր Հայք մնաց անկախ։ Երկու ժամանակակից հեղինակներէ, ի Պողիբեայ եւ ի Ստրաբոնէ ունինք զայս, զորմէ խօսուած է շատ անգամ ի Պատմութեան մերում։ Հնագոյն եւ հաւատարմագոյն տեղեկութիւն զՓոքուէն Հայոց է Ստրաբոնին։ «Աշխարհ Փոքուն Հայոց—ասէ աշխարհագիրն յոյն, միանգամայն պատմիչ—է երկիր ըստ բաւականին պտղաբեր, որոյ որպէս եւ աշխարհին Ծոփաց եղեն միշտ թագաւորք կամ տոհմային իշխանք, որ դաշնակից էին յաճախ ընդ թագաւորս բունն անուանեալ Հայոց, բայց առանձին եւս գործէին։ Իշխանք Փոքուն Հայոց ունէին ընդ իշխանութեամբ իւրեանց զԽաղտիս եւս։ Բայց իբրեւ սկսաւ զօրանալ Միհրդատ Եւպատոր՝ էառ զամենայն երկիրն զայն, որպէս եւ զԿողքիս։ Տեսեալ եթէ օգուտ բազում կայր նմա յերկրէն՝ ետ շինել բերդս եօթանասուն եւ հինգ, իբրեւ տունս մեծի մասին գանձուց իւրոց։ Մին ի կարեւորագունից անտի էր ի վերայ սահմանին Հայոց Մեծաց։ Գիտէր Միհրդատ, եթէ անթիւ դիւրութիւնս մարթէր մատուցանել նմա գօտին Պարխարայ, ջրաւէտն եւ անտառաշատ, թէպէտեւ լի ձորովք եւ սարաւանդիւք, վասնորոյ եւ ընտրեաց մանաւանդ անդէն շինել իւր տունս գանձուց։ Նա եւ զայս վերջին ծագ թագաւորութեան Պոնտոսի ընտրեաց իւր ի տեղի ապաւէնի ի խաղալն Պոմպէի որագ արագ յաղթութեամբ. եւ զկայ առեալ յՆկեղեաց՝ կալաւ

մօտ ի Դաստիրա,— ոչինչ հեռի յԵփրատայ, որ բաժանէ որպէս յայտ է՝ զԵկեղեաց ի Փոքուէն Հայոց,— լեառն մի ջրաբբի և մնաց անդէն, մինչև առ երկիւղի, թէ գուցէ պաշարեսցի անդ՝ եդ ի մտի անցեալ ընդ Պարխար մտանել ի Կողքիս և անտի ի Բոսփորոս։ Մօտ ի նոյն տեղի, այլ ի Փոքր Հայս՝ Պոմպէոս շինեաց զՆիկոպոլիս քաղաք, որ կայ ցայսօր և է բազմամարդ յոյժ։ Ի բազում իշխանաց անտի, որ հաւանութեամբ Հռոմայեցւոց տիրեցին Փոքուն Հայոց՝ վերջինն եղև Արքեղայոս։ Իսկ երկրին Խաղտեաց մինչև ի Կողքիս իշխէ այժմ Պիւթոդորիս, կին իմաստուն և վարժ ի վարել զգործութիւնն։ Եղեն սորա ուստերք երկու և դուստր մի։ Մին յուստերաց նորա սակաւ մի յառաջ կացուցաւ թագաւոր Հայոց Մեծաց։ Պիւթոդորիս ամուսնացաւ ընդ Արքեղայոսի (արքայի Փոքուն Հայոց), և յետ կալոյ ընդ նմա մինչև ի վախճանել նորա՝ այժմ է այրի և տէր աշխարհացն զոր արդէն յիշեցաք։ Ասասցուք և որ ինչ վասն Խաղտեաց է։ Ընդ երկիր սոցա անցանէ Պարխար։ Ցեղք որ ի լերինս բնակեն՝ են վայրենի։ Են ցեղք, որոց տեղիք բնակութեան են գլուխք ծառոց կամ տանիք փայտակերտ աշտարակաց որ Մոսինի կոչին, յորմէ Մոսինէքն անուն, զոր եդուն նոցա Հինքն։ Այս ամենայն բարբարոսք ոչ այլ ինչ ունին յուտել, բայց զմիս էրէոց և վայրի կաղին, որ թօթափին ի ծառոց. ունին և հնարս իմն յարձակելոյ ի վերայ ուղևորաց՝ խոյանալով միայն ի բարձուէ աշտարակաց իւրեանց։ Պատմի թէ Եօթնագեանք զերիս գունդս ի զօրացն Պոմպէի սատակեցին՝ յանցանել նոցա ընդ գօտին Մոսքեկայ։ Եդեալ էր նոցա յանցս ճանապարհի զօրացն Հռոմոց անօթս լի ըմպելեաւ, խառնելով յարբեցուցիչ իմն մեղուէ, զոր ոստք ծառոց ինչ ծորեցուցանեն. ապա կային մնային տեսանել զելս իրացն։ Եւ իբրև տեսին զզօրսն Հռոմոց ի ցնորս արբեցութեան՝ հասեալ ի վերայ կոտորէին զնոսա ըստ իւրեանց հեշտի։ Նոյնպիսի են և այժմու Խաղտիք, որ քան զամենայն ցեղս մօտագոյն են ի Փառնակիա, և կոչէին ի հնումն Քաղիւպք» (Ստր. ԺԲ. 3. 18)։ ԶԽաղտեաց կը գրէ նաև Քսենոփոն իբր երկերիւր և յիսուն ամօք յառաջ քան զՍտրաբոն այսպէս. «Անտի գնացին (Ցոյնք) վտաւանս յիսուն, օթևանօք եօթն ընդ աշխարհն Խաղտեաց, որ պատերազմողք են քան զայլ ամենայն ազգս որոց հանդիպեցաք։ Հարկ եղև մեզ պատերազմել ընդ նոսա։ Ունէին զրահս ի կտաւէ, որ հասանէին մինչև յազդերս նոցա։ Փոխանակ քղանցից չուանք գալարեալք իբրև զծոպս կախէին ի զրահից անտի։ Ունէին նաև սռնապանս, սաղաւարտ, և զմիջով իւրեանց, պէս գունակ դաշունից Ղակեդեմոնացւոց՝ թուր, որով փողոտեն զգերիս, և ապա հա-

տեալ զգլուխս նոցա՝ գնան, տանելով զկառափունսն ի ձեռին։ Երգեն, կաքաւեն, իբրև տեսանեն զթշնամին։ Կրեն նաև նիզակ երկայն իբրև կանգունս երիս, միածայր։ Կացին յամուրս իւրեանց, և ապա իբրև տեսին, զի անցանէին Յոյնք՝ զհետ պնդեցան նոցա և կռուէին անդադար։ Յետոյ մտին յամուր տեղիս, ուր տարեալ էր նոցա զամենայն պաշար իւրեանց, մինչև ոչ գտեալ Յունաց պաշար՝ կերան զանասունսն զորս հանեալ էր նոցա ի Տայոց» (Քսենոփ. Նահանջ բիւրուն)։

**19.** Երրորդ սահմանակից երկիր Մեծին Հայոց յարևմտից հիւսիսոյ էր Պոնտոս։ «Յեղանել Միհրդատայ մեծի ի գահն Պոնտոսի, ասէ Ստրաբոն, թագաւորութիւնն այն ունէր զամենայն երկիրն, յարևելից Աղիւս գետոյ՝ մինչև յաշխարհն Տիբարացւոց և մինչև ի սահմանս Հայոց, և ի միւսմէ կուսէ, այն է յարևմտից Աղիւս գետոյ մինչև յԱմաստրիս ի Պափղագոնիա։ Միհրդատ յաւել ի տէրութիւն անդր յարևմտից զամենայն ծովեզրն մինչև ի Հերակղէա, և յարևելից զամենայն ծովեզրն մինչև ի Կողքիս և ի Փոքրն Հայս։ Այս էին սահմանք Պոնտոսի՝ մինչ յետ մահուն Միհրդատայ Պոմպէոս կալաւ զերկիրն։ Որ ինչ (Փոքուն) Հայոց և Կողքիսայ անկ էր՝ զայն բաժանեաց մանր մանր իշխանաց, որոց օգնական լեալ էր նմա ի պատերազմունս Միհրդատայ» (Ստր. ԺԲ. 3. 1)։ Արևմտեան մասին Հայոց դիցապաշտութեան ոչ սակաւ վերաբերութիւն ունին տեղիք ինչ հեթանոսական պաշտամանց, որ նշանաւոր էին ի Պոնտոս։ Այս տեղեաց գլխաւորն էր երկրորդն Կոմանա, այն է Կոմանայն Պոնտոսի առ Իրիս գետով։ «Քաղաքս այս—ասէ Ստրաբոն ականատես—զոր սովորութիւն է կոչել Կոմանա Պոնտական առ ընտրելոյ ի համանուն քաղաքէն մեծին Կապադովկիայ՝ նուիրեալ է նմին դից, որում և նայն, և ունի մեհեան շինեալ զնոյն ձև և զօրինակ։ Նա և սպաս պաշտամանն է գրեթէ նոյն, եթէ ըստ զոհիցն և պատգամաց, և եթէ ըստ պատուոյն մեծարանաց որ մատուցանի քրմապետին։ Բայց նմանութիւնն առաւել էր մանաւանդ առ նախնի թագաւորօք Պոնտոսի, մինչ երկիցս ի տարւոջ, յելս դիցն ի ճեմ (թափօր)՝ ածէր քրմապետն զապարօշն զգլխով, և մեծապատիւ մեծարէր իբրև երկրորդ ի տէրութեանն զկնի թագաւորին։... Կոմանայս այս է երևելի վաճառաշահ քաղաք և մին ի գլխաւոր մթերանոցաց վաճառացն եկելոց ի Հայոց։ Ի ճեմս դիցն խռնին անդր ի բազում կողմանց, ի քաղաքաց և ի գիւղից՝ բազմութիւնք արանց և կանանց, ցանկացեալք լինել հանդիսատես տօնին. Նա և զամն ողջոյն գան յայցելութիւն քաղաքին օտարականք, որոց ուխտս եդեալ իցէ զո-

հել ի բագնի անդ դիցն։ Տենչանք զեղխութեան և հեշտանաց հասարակաց իմն են բնակչացն. պարտէզք նոցա են այգեստանք, և բազմութիւն կանանց նուիրելոց, յորոց շատք ստրուկք են մեհենին՝ կեան խառնակութեամբ։ Մարթ է ասել յիրաւի, թէ փոքր իմն Կորնթոս է քաղաքն։ Ի Կորնթոս, որպէս յայտ է՝ մեծ բազմութիւն յայրատ կանանց սպասաւորաց ի մեհենի Աստղկան՝ հրապուրեալ ձգեն անդր, նոյնպէս ի ժամանակս տարեկանաց՝ անթիւ բազմութիւն օտարականաց։ Վաճառականք ընչեղք և զօրականք զան անդր ի սպառսպուռ կործանումն, յայն սակս լեալ է ի բանս կարգի առակաց, թէ Չէ ամենեցուն տուեալ բնակել ի Կորնթոս։ Ահաւասիկ որ ինչ կայր մեզ ասել զԿոմանայ» (Ստր. ԺԲ. 3. 32—36)։ Բայց քաղաք նուիրեալ բուն Անահտայ էր Զեղա, զորմէ ասէ Ստրաբոն, թէ էր ի վերայ բարձրաւանդակի, որ կը կոչուէր Շամիրամայ։ (Տես Ա. Մասն, էջ 21, 22)։ «Զեղա, ասէ Ստրաբոն, ունի մեհեան անուանի նուիրեալ Անահտայ, այն է դիցն զոր պաշտեն և Հայք»։ (Տես Ա. մասն, էջ 271)։ Միայն աստ աւելի իմն համեստութիւն կայ ի պաշտամունսն. և այս է պատճառ, զի բնակիչք Պոնտոսի առ հասարակ, յորժամ ունիցին արկանել ձեռն ի գործ ինչ կարևոր՝ անդր մանաւանդ երթան երդնուլ միմեանց... Այլն ամենայն, որպէս թիւ քրմացն, պատիւն և բարձ զոր ունին քրմապետքն առ արքայն՝ նոյնպիսի է աստ որպիսի ի Հայս։ Այժմ այս մեհեան է ընդ իշխանութեամբ Պիւթոդորայ տիկնոջ, բայց և յառաջագոյն իսկ քան զնա բազում ինչ կրեաց ի Թագաւորաց, որ պակասեցուցին զթիւ քրմացն և ցամաքեցուցին զաղբիւր մեծութեան նորա, գրաւեալ զմեծ մասն կալուածոց մեհենին յարքունիս, և երկիրն որ մեհենիցն նուիրեալ էր՝ բաժանեցաւ ի բազում իշխանութիւնս։ Առաջինք ի Թագաւորաց Պարսից ոչ առ դաւդնաքեայս ունէին զքաղաքն, այլ համարէին իբրև տեղի սրբութեան դիցն Պարսից, և թողուին քրմապետաց իշխել միահեծան։ Բնակիչք քաղաքին էին յայնժամ համակ քուրմք, յորոց մէջէ քրմապետն ունէր զառաջին տեղին, պաշարեալ ի բազմութենէ սպասաւորաց։ Կեայր ի յղփութեան, վարելով զերկիրն իբրև իւր սեպհական» (Ստր. ԺԲ. Գ. 37)։

Ստրաբոն կը յիշէ ի Կապադովկիա Շամիրամեան կոչուած ուրիշ բլուր կամ բարձրաւանդակ, որոյ վրայ շինուած էր քաղաքն Տիանա։ «Տիանա, ասէ Ստրաբոն, կոչի երբեմն և Եւսեբիա Տաւրոսի։ Երկիրն շուրջանակի է առ հասարակ պտղաբեր, բազում ուրեք տափարակ։ Իսկ քաղաքն շինեալ է ի վերայ միոյ ի սարահարթ բարձրաւանդակաց անտի, որ կոչին Շամիրամայ, շուրջ պա-

*տեալ գեղեցիկ և հզօր պարսպաւ» (Ստր. ԺԲ. 2. 7)։ Տիանա, որպէս և գաւառն Տիանիտիս՝ կը յիշեցունեն զԱնահիտ (Տես Ա. Մասն Պատմութեան մերոյ, էջ 270). և էր արդարև, ըստ նմին Ստրաբոնի, ոչ կարի հեռի ի Տիանայ անուանի մեհեանն Անահտայ Պերասիայ զոր յիշեցաք վերագոյն։*



## ԳԼՈՒԽ Ժ.

### ՊԱՐԹԵՒՔ ԵՒ ՀՌՈՄԱՅԵՑԻՔ ՅԵՏ ՏԻԳՐԱՆԱՅ։

*1. Աղերս բարեկամութեան Պարթեւաց եւ Հայոց: 2. Ծննիոս Փլորոս: 3. Պարթեւք յԱսորիս: 4. Դէպք յետ մահուն Կեսարու: 5. Իրք Հրէից զայնու ժամանակաւ: 6. Արտաւազդ Ա: 7. Հայք զկնի Արտաւազդայ: 8. Թագաւորք զկնի Արտաւազդայ մինչեւ Վոնոն:*

**1.** Յետ մահուան Միհրդատայ մեծի, երբ Հռոմայեցիք (Պոմպէոս) նուաճելով զԱսորիս մինչև Եփրատ և առնելով նահանգ եղան սահմանակից Պարթևաց, և կ'սպառնային խաղալ յառաջ՝ բնական էր Պարթևաց մօտենալ Հայոց։ Առ Արտաւազդաւ որ յաջորդեց հօրն 54 կամ 56 ն. ք. զՔր.՝ երկու ազգաց մտաւորութիւնն կը թուի յայտնի։ Խնամութիւնն որ արդէն կար,— քանզի քոյր Արտաւազդայ էր կին Բակրոյ արքայորդւոյն Պարթևաց,— փոխուած էր յընտանութիւն։ Եթէ պարտ է հաւատալ Պլուտարքոսի,—և արդարև չէ անհաւանական,—Արտաւազդ և Որոդ (Արշակ ԺԴ. 54—36), այնպէս ընտանի էին, մինչև տալ միմեանց խնջոյս և ընթեռնուլ յունարէն քերթուածներ։ «Որոդ, ասէ նոյն մատենագիր, չէր ինչ անտեղեակ յոյն լեզուի և դպրութեան, և Արտաւազդ (որդի Կղէոպատրայ) յօրինէր երգս և ճառս և պատմութիւնս։ Իբրև բերաւ գլուխն Կրասոսի ի դուռն տաճարին, ուր բազմեալ էին երկոքին թագաւորքն ի ճաշ՝ ոմն ի գուսանաց անտի Յասովն անուն երգէր զԱգաւեայ աղէտսն ի յոյն լեզու»։ Այսպէս առ Որոդաւ, որ կը հանդիպի Տիգրանայ վերջին տարիներուն և Արտաւազդայ թագաւորութեան սկզբան՝ Հայք, առ երեսս բարեկամ և դաշնակից Հռոմայեցւոց՝ էին սրտով միաբան ընդ Պարթևս և մէտ ի սոսա մանաւանդ քան ի Հռոմայեցիս։ Սակայն չունինք ամենևին վկայութիւն ի պատմութենէ, թէ Արտաւազդ յայտնի հակառակեցաւ Հռոմայեցւոց, իբրև բարեկամ Պարթևաց։ Կրասոսի արշաւանաց ժամանակ (54) չիք ամենևին ակնարկութիւն վաւերական պատմութենէ, թէ Արտաւազդ—(Տիգրան մեռած էր յայնժամ ըստ Նոր

և ստուգագոյն Հաշուի. տես վերագոյնն)—օգնեց Պարթեւաց. իսկ յարշաւանսն Անտոնիոսի (36) կը տեսնենք զԱրտաւազդ 6,000 Հեծելովք օգնական Անտոնեայ, թէպէտ յանկարծ կը թողու զՀռոմայեցին և կը մեկնի առ եղեռանէ իւր։ Զայս կ'ակնարկէ Ստրաբոն յասելն զԱրտաւազդայ. «Ցաջորդն Տիգրանայ Արտաւազդ եղև բարենշան, ցորչափ եկաց ի բարեկամութեան ընդ Հռոմայեցւոց. այլ իբրև մատն եղև Անտոնեայ վասն Պարթևաց ի մեծի պատերազմին նորա ընդդէմ ազգին այնմիկ՝ քաւեաց ծանրագնի զսխալանսն» (Ստր. ԺԱ. 15)։ Խորենացին Հակառակ ժամանակակից պատմութեան՝ կը գնէ ոչ միայն օգնական Պարթևաց զՏիգրան, որ արդէն մեռած էր (54), այլև գլխաւոր գործող Կրասոսի և Անտոնիոսի պատերազմներուն մէջ. մանաւանդ թէ Հռոմայեցւոց այն կրկին արշաւանն ուղղեալ կը Համարի Տիգրանայ դէմ, իսկ զՊարթևս օգնական միայն Տիգրանայ, մինչև փոխել իսկ զանուանս զօրավարացն ի Հայերէն, որպէս զԲարզափառնէս զօրավար Պարթև՝ ի Բարզափրան Ռշտունի, և զԲակուր տակառապետ Պարթևաց՝ ի Գնէլ Գնունի տակառապետ Տիգրանայ (Խոր. Բ. ԺԷ—ԺԹ)։

Ահա այն պատերազմներուն Համառօտ պատմութիւնը։

Ցետ կռիւներուն Մարիոսի և Սուղղայ, ի մէջ ազնուականաց և ռամկին՝ վերջիններուն կողմը տակաւ տկարացաւ, մինչև, ինչպէս տեսանք՝ Ցուլիոս Կեսար, Կրասոս մեծատուն յոյժ և Պոմպէոս, առնլով ի բուռն վերին իշխանութիւնը՝ կազմեցին զառաջին եռապետութիւնն (60)։ Կեսար առաւ զԳաղղիա և զԼիւրիկէ, Պոմպէոս զՍպանիա և զԱփրիկէ, իսկ Կրասոս զԱսորիս։ Ցետ մեկնելոյն Պոմպէի յարևելից և յառաջ քան զգալուստն Կրասոսի յԱսորիս՝ Գաբինիոս տրիբուն ժողովրդեան (67), ապա Հիւպատոս (58)՝ դրուեցաւ կուսակալ Ասորւոց (57)։ Կրասոս, այր ագահ, գալով յարևելս, յետ կողոպտելոյ մեհեաններ և զտաճարն Երուսաղեմի (54)՝ խաղաց ի վերայ Պարթևաց, և կորեաւ բոլոր զօրօքն Միջագետաց անջուր և աւազուտ անապատներուն մէջ (53)։ Այս պատերազմին մէջ Սուրէն սպարապետ Որոդայ՝ էր զօրավար Պարթևաց։

**Չ.** Եննիոս Ցուլիոս Փլորոս լատին պատմիչ, որ ծաղկեցաւ առ Ադրիանոսիւ ի սկզբան Բ. դարու՝ Կրասոսի արշաւանաց և պարտութեան վրայ կը խօսի այսպէս. «Ժողովուրդն Հռոմէական մինչ զինուք Կեսարու նուաճէր զԳաղատացիս ի Հիւսիսակողման՝ առնոյր յարևելս վէր պատիկ ի ձեռաց Պարթևաց։ Չէ մարթ ստակայն մեզ տրտունջ լինել զբախտէն. այս մխիթարութիւն պակասէ մերում թշուառութեան։ Ագահութիւն բդեշխին Կրասոսի, որ Հակառակ և՛ աստուածոց և՛ մարդկանց կամէր յագեցուցանել զանձն

ոսկւով Պարթևաց՝ պատժեցաւ կոտորածիւ երեքտասան լեգէոնացն և իւրոց իսկ կենաց կորստեամբ։ Կրասոս բանակեալ էր առ Նիկեփորիոն քաղաքաւ, յորժամ Հրեշտակք առաքեալք յՈրոդայ արքայէ եկին յուշ առնել նմա զդաշինսն կռեալս ընդ Պոմպէի և ընդ Սուղլայ։ Քաղցեալն զանձուց Պարթև թագաւորին և ոչ բարուրս ինչ խորհեցաւ է բարեքել զանիրաւութիւնն, այլ ասէր միայն. «Տաց պատասխանի ի Սելևկիա»։ Վասնորոյ դիքն վրէժխնդիրք դրժելոյ դաշանց՝ օգնեցին Դաւոյն և քաջութեան թշնամւոյն։ Նախ Կրասոս հեռանայր յԵփրատայ, որ միայն մարթէր անցուցանել յայնկոյս զբանակն և լինել պատուար ի թիկանց. ապա վստահ էր յասորի ումն Մազարա անուն, կեղծաւորեալ փախստեայ, որոյ լեալ առաջնորդ բանակին՝ մոլորեցոյց զնա ի դաշտս մեծատարածս, ուր զօրն եղև նշաւակ յամենայն կողմանց յարձակմանց թշնամւոյն։ Այն ինչ հասեալ էր Կրասոս ի Խառան՝ երևէին զօրավարք Պարթևաց Սիղզակն և Սուրէն, որոց դրօշք փողփողեալք յոսկւոյ և ի մետաքսէ՝ տատանէին ի կողմանց կողմանց։ Այրուձի նոցա անդէն պաշարէր զմեզ, և տեղայր նետս իբրև կարկուտ ի վերայ մեր։ Այս եղեն աղէտք ողբոց որ կորուսին զբանակ մեր։ Կրասոս ինքն ձգեալ, որպէս թէ ի խորհուրդ ինչ մտանելոց իցեն՝ ի տալ նշանին անկանէր արդեօք կենդանւոյն ի ձեռս թշնամւոյն, եթէ ընդդիմութիւն տրիբունացն չէր ստիպեալ զբարբարոսն սպանանել զնա առ արգելլոյ զփախուստ նորա։ Այլ տարան նոքա զգլուխ նորա. որ եղև նոցա խաղալիկ։ Արդէն իսկ սպանեալ էր նոցա նետահար զորդին Կրասոսի գրեթէ առաջի աչաց հօրն։ Մնացորդ թշուառ բանակին աճապարեալ ի փախուստ՝ ցրուէր ընդ Հայս, ընդ Կիլիկիա և ընդ Ասորիս. հազիւ մի ոմն ի զինուորաց եկն տալ զգոյժ չարեացն։ Աջ ձեռն Կրասոսի և գլուխ նորա, անջատեալ ի մարմնոյն՝ մատուցան առ թագաւորն, որ առնէր զնոսա առակ նշաւակի որպէս արժան իսկ էր։ Արդարև հեղին ոսկի հալեալ ընդ բերանն, զի ոսկին սպառեսցէ զանշունչն և զանզգայ նշխար առնն, որոյ սիրտն բորբոքէր ի ծարաւոյ ոսկւոյն» (Փլոր. Գ. 12)։

3. Յետ պարտութեանն և սպանման Կրասոսի՝ զօրավար նորա Կասսիոս, մին ի սպանողաց Կեսարու, մինչ Գաբինիոս մեկնած էր՝ աճապարեց բռնել զԱսորիս, չտալու համար Պարթևաց թոյլ անցնել ընդ Եփրատ. բայց երբ ծագեցաւ պատերազմն ի մէջ Կեսարու և Պոմպէի (51—48)՝ Կասսիոս որ կուսակից էր այս վերջնոյն՝ ստիպուեցաւ մեկնել յարևմուտս (ի Լիւրիկէ)։ Զայսու ժամանակաւ էր որ Պարթևք, առաջնորդութեամբ արքայորդւոյն Պարթևաց Բակրոյ՝ անցան զԵփրատ, մինչ Հռոմայեցիք զբաղեալ էին

քաղաքային պատերազմաւ ի մէջ Պոմպէի և Կեսարու։ Պոմպէոս սպանուեցաւ յԵգիպտոս (48), և Կեսար, որ կը խորհէր միահեծան վարել զիշխանութիւնն իբրև թագաւոր կամ կայսր՝ ընկերհաշտութեան գլխաւորներէն սպանուեցաւ ծերակուտին մէջ դաւով (44)։ Այս խռովութիւնք Հռոմայեցւոց յարևմուտս արդարև նպաստ մեծ եղան Պարթևաց, որոց նպատակն էր վանել զՀռոմայեցիս յերկրէն Ասորւոց։ Հայք կը յուսային թերևս այս առթիւ միւսանգամ ի ձեռս բերել երկիրներն, զորս կորուսած էին ի Միջագետս, յԱսորիս և ի Պաղեստին։ Բայց վրիպեցան ի յուսոյ, քանզի իրք Պարթևաց սկսան տակաւ ձախողել։

4. Յետ մահուան Կեսարու, երբ կազմեցաւ երկրորդ եռապետութիւնն (42) ի մէջ Անտոնեայ, Հոկտաւիոսի և Ղեպիդոսի՝ Անտոնիոս առնլով զարևելս՝ ղրկեց զՎենտիդիոս զօրապետ իւր, որ գալով յԱսորիս վանեց զՊարթևս մեծ կոտորածով։ Յուստինոս Պարթևաց պատերազմներն ընդ Հռոմայեցիս, նախ ի Միջագետս ընդ Կրասոսի և ապա յԱսորիս ընդ զօրավարին նորա Կասսեայ, որ յետ կորստեան եռապետին աճապարելով եկած էր պաշտպանել զԱսորիս ընդդէմ Պարթևաց, որպէս և ընդ Վենտիդիոսի զօրավարին Անտոնեայ՝ կը համառօտէ այսպէս. «Որոդէս (արքայ Պարթևաց) ետ պատերազմ ընդ Հռոմայեցւոց և կոտորեաց զբանակ նոցա ողջոյն հանդերձ Կրասոսիւ և որդւով նորա։ Որդին Որոդայ Բակուր, առաքեալ ի յանդ հանել զպատերազմն՝ եղև նշանաւոր յԱսորիս մեծամեծ արութեամբքն. այլ գրգռեալ ի նախանձ զհայրն իւր՝ կոչեցաւ յետս։ Յետ մեկնելոյ նորա, զօրն Պարթևաց թողեալ յԱսորիս՝ կոտորեցաւ հանդերձ ամենայն զօրավարօքն ի Կասսիոսէ գանձապետէն Կրասսեայ։ Յետ սակաւ միոյ քաղաքային պատերազմն ի մէջ Կեսարու և Պոմպէի սպատառեաց զպետութիւնն հռոմէական յերկուս։ Պարթևք կալան զկողմն Պոմպէի եթէ վասն դաշանցն, զոր կռեալ էր նոցա ընդ նմա ի պատերազմին Միհրդատայ, և եթէ վասն սպանմանն Կրասոսի, որոյ որդին դիտէին թէ կռուէր ի բանակին Կեսարու, և կասկածէին իմն, զի եթէ յաղթիցէ Կեսար՝ մանուկն Կրասոս խնդրելոց էր զվրէժ արեան հօրն։ Ուստի յետ անկման կողմանն Պոմպէի օգնեցին Կասսիոսի և Բրուտոսի, հակառակորդացն Աւգոստեայ և Անտոնիոսի։ Իբրև վախճանեցաւ պատերազմն այն (Պոմպէի ընդ Կեսարու)՝ միաբանեալ ընդ Ղաբիենոսի (թշնամւոյն Անտոնիոսի) աւերեցին զԱսորիս և զԱսիա դարձեալ ընդ հրամանատարութեամբ արքայորդւոյն Բակրոյ, որ անկաւ մեծաւ զօրութեամբ ի վերայ ճամբարին Վենտիդիոսի (զօրավարին Անտոնեայ), որ յետ Կասսեայ հարեալ էր զզօրս Պարթևաց, մինչև

*եկեալ էր Բակուր։ Վենտիդիոս որպէս թէ երկիւղ ինչ ունիցի՝ մնաց ի պատնէշսն, և կրեաց առ ժամն նախատինս ի նոցանէ։ Ապա տեսեալ զՊարթևս առ խնդութեանն ի զեղծի՝ առաքեաց զմի մասն ի լեգէոնաց իւրոց, որ հարին ցրուեցին զնոսա։ Բակուր կարծեցեալ, թէ իւրքն ի փախստեան իւրեանց ձգեցին զամենայն լեգէոնսն զկնի՝ անկաւ միւսանգամ ի վերայ ճամբարին Վենտիդեայ, համարեալ զճամբարն անպաշտպան։ Յայնժամ Վենտիդիոս խաղացոյց զմնացեալ լեգէոնսն և խորտակեաց իսպառ զզօրութիւնն Պարթևաց հանդերձ նովին իսկ Բակրով։ Ոչ երբէք ուրեք ի պատերազմունս կրեալ էր Պարթևաց այնպիսի անհնարին կոտորած։ Իբրև այս գոյժ հասանէր յերկիր նոցա՝ Որոդ առ որ եկեալ էր համբաւ, թէ զօրք նորա աւերէին զԱսորիս և մերձ էին մտանել յԱսիա՝ առեալ յանկարծ զբօթ մահուան որդւոյն և զկոտորած զօրաց իւրոց՝ առ վշտին վտանգի անկանէր յանզգայութիւն։ Անցուցանէր զաւուրս բազումս առանց խօսելոյ ընդ ումեք, չառնոյր ճաշ և ոչ մի բան ոչ կարէր ասել, որպէս թէ համրացեալ էր։ Յետ բազմաց, իբրև մեղմանայր կսկիծն և առնոյր խօսել՝ ոչ այլ ինչածէր ընդ բերան, բայց միայն զանուն Բակրոյ»* (Յուստ. Դպր. ԽԲ. 4)։

*Այսպէս Պարթևք յետ մնալոյ իբր քսան տարի* (54—36) *յԱսորիս՝ մեկնեցան, մանաւանդ զի Անտոնիոս նախանձելով իւր զօրավարին Վենտիդեայ յաղթութեանց՝ կու գար անձամբ վճարել Արևելից գործը* (36)։

**5.** *Որովհետև Պարթևք և Հայք, մինչդեռ էին յԱսորիս ունեցան գործ մեծ Հրէից հետ՝ հոս հարկ է մեզ խօսել համառօտիւ և՛ զսոցանէ, և՛ թէ զինչ էին այն գործք։*

*Ինչ որ պիտի դնենք հոս Հրէից պատմութենէն՝ համառօտութիւն է Յովսեպոսէ, որ (Նախն. պտմ. Հրէից, Գիրք ԺԲ.—Ի.) կը պատմէ երկար զՀրէից։ Մենք պիտի առնունք որչափ կարևոր է մեզ, քանզի դիտաւորութիւն մեր չէ տալ մանր զպատմութիւն Հրէից։ Մեր քաղուածն ունի հոս Յովսեպոսի յիշեալ պատմութեան ԺԴ.* 24 *և ԺԵ.* 2 *գլուխներէն կարևոր կէտեր։ ԶՀիւրկանայ միայն պիտի խօսինք մանր, քանզի յայսմ մասին է մանաւանդ, որ մեր պատմութիւնը (Խոր., Բուզ.) կը տարբերի ժամանակակից պատմութենէ։*

*Յայտնի է, թէ յետ դարձին իւրեանց ի գերութենէ հրամանաւ Կիւրոսի՝ Հրեայք եղան ընդ իշխանութեամբ Պարսից, ապա ընդ Մակեդոնացւովք և ընդ Սելևկեամբք, սակայն էին ինքնօրէն ընդ գլխաւորութեամբ քահանայապետաց։ Ասորւոց (Սելևկեանց) թագաւորին Անտիոքոսի Եպիփանու հալածանաց ժամանակ Հրեայք*

ապստամբելով առաջնորդութեամբ Մակաբեանց (քահանայական ցեղ)՝ եղան անկախ, ընդդիմանալով քաջութեամբ Սելեւկեանց բռնութիւններուն։ Մատաթիա քահանայ և յետ նորա որդիք նորա Յուդա, Յովնաթան և Շմաւոն (167—135) եղան պաշտպան Հրէից ազգին և կրօնից։ Յետ մահուան Շմաւոնի՝ որդին Յովհաննէս, որ կոչեցաւ Հիւրկանոս Ա. (135—107)՝ առաւ գլխաւորութիւնը, ապա որդին Արիստաբուղոս Ա. (107—106), որ առաւ պատիւ և անուն թագաւորի հանդերձ քահանայապետութեամբ։ Սորա կին էր Սողոմէ որ և Աղեքսանդրա։ Ապա եղբայրն Հիւրկանու Աղեքսանդրոս Ա. (106—79), ապա նոյն ինքն Աղեքսանդրա (79—71), որ կարգեց ինքեան յաջորդ զորդին իւր Հիւրկանոս Բ. (71—69), զոր ընկենլով իշխանութենէն եղբայր նորա Արիստաբուղոս Բ՝ կալաւ աթոռ (69—64)։ Կռիւ մեծ ծագեցաւ ի մէջ երկուց եղբարց (66—65)։ Պոմպէոս մինչդեռ էր յարեւելս (64)՝ եկաց իրաւարար ի մէջ երկուց եղբարց, յորդորեց զնոսա ի սէր. բայց որովհետև կը թուէր ի կողմն Հիւրկանու՝ Արիստաբուղոս ըմբոստացաւ, և Պոմպէոս զայրանալով առաւ զԵրուսաղէմ, զՀիւրկանոս կացոյց իշխան քահանայապետ Հրէից, զՀրէաստան արար նահանգ, և զԱրիստաբուղոս արկանելով ի շղթայս հանդերձ որդւովքն Աղեքսանդրիւ և Անտիգոնեաւ՝ տարաւ ի Հռոմ ի ձաղանս։

Հիւրկանու (64—39) պաշտպան էին ոչ միայն Հռոմայեցիք, այլև Եդովմայեցւոց կուսակալին Անտիպայ որդին Անտիպատրոս, զոր Յուլիոս Կեսար կացոյց կուսակալ (աշխարհական իշխան) Հրէից (48), և զՀիւրկանոս հաստատեց ի քահանայապետութեան։ Այս Անտիպատրոս զիւր երեց որդին Փասայէլ դրաւ մարզպան Երուսաղեմի և զկրտսերն Հերովդէս (Հերովդէս մեծ)՝ Գալիլեայի։ Արիստաբուղոս Բ. և որդին Աղեքսանդր, զորս Պոմպէոս տարած էր Հռոմ գալով ի Հրէաստան ջանացին բերել միւսանգամ ի ձեռս զիշխանութիւնն Մակաբեանց, բայց սպանուեցան (49)։ Կը մնար կենդանի Արիստաբուղեայ կրտսեր որդին Անտիգոնոս։ Այս Անտիգոնոս գտաւ օգնութիւն մեծ ի Պարթևաց, մինչ Հռոմայեցիք կը տագնապէին երկրորդ եռապետութեան կռիւներով։ (Քանզի յետ մահուն Կեսարու՝ նորա կուսակիցներէն Անտոնիոս և Լեպիդոս, և Կեսարու որդեգիրն և ժառանգ Գայիոս Հոկտաւիոս կազմեցին երկրորդ եռապետութիւնը (43—30)։ Հոկտաւիոս առաւ զարեւմուտս, Լեպիդոս զԱփրիկէ և Անտոնիոս զարեւելս։ Հոկտաւիոս մերժեց զԼեպիդոս (37), և թշնամացաւ ընդ Անտոնիոսի։ Ծագեցաւ քաղաքային պատերազմն ի մէջ այս երկուց աւագ արանց։ Անտոնիոս

յաղթուեցաւ յԱկտիոնի կռուին (31), և Հոկտաւիոս եղաւ միահեծան կայսր և կոչեցաւ Օգոստոս Հոկտաւիանոս (30)։

Անտիգոնոս, որ ըստ պատմութեան Յովսեպոսի կը ջանար յիւր կողմն յանկուցանելով զՀրեայս հալածել զՀիւրկանոս և զՀերովդեանս՝ տեսնելով զանկումն հռոմէական կողման յԱսորիս և զզօրանալն Պարթևաց՝ շահեցաւ զսոսա, խոստանալով նոցա հազար տաղանդ և հինգ հարիւր կին, եթէ մերժելով զՀիւրկանոս և զՀերովդէս եղբարբն Փասայելիւ՝ կացուցանէին զնա թագաւոր։ Բակուր և Բարզափառնէս, երևելի իշխան Պարթևաց (ըստ Խորենացւոյն Բարզափրան Ռշտունի, սպարապետ Տիգրանայ), կը մտնեն ի Հրէաստան (40), և միանալով ընդ Անտիգոնեայ կը պաշարեն զՀիւրկանոս, զՀերովդէս և զՓասայէլ յԵրուսաղէմ։ Փասայէլ և Հիւրկանոս կը ղրկուին առ Բարզափառնէս։ Այլ ոմն Բակուր տակառապետ (ըստ Խորենացւոյն Գնէլ Գնունի տակառապետ Տիգրանայ) կը ջանայ խաբկանօք բռնել նաև զՀերովդէս, որ իմանալով կը փախչի գիշերայն։

Պարթևք իբրև ի հեռուկս Հռոմայեցւոց կը կացուցանեն Հրէից թագաւոր զԱնտիգոնոս. Հիւրկանոս և Փասայէլ կը մատնուին ի ձեռս նորա. զառաջնոյն ականջները կտրել կու տայ Անտիգոնոս, որպէս զի չկարենայ լինել քահանայապետ, քանզի օրէնքը կ'արգելուր տալ խեղերու այն պաշտօնը. իսկ Փասայէլ չկրնալով անձին առնել, քանզի կապեալ էր՝ առ յուսահատութեան կը հարկանէ զգլուխն զքարի, և բժիշկք զորս կը ղրկէ Անտիգոնոս դարմանել զնա՝ կը լնուն թոյն ի վէրսն, և կը մեռնի։ Հերովդէս խոյս կու տայ գաղտ, և մեծ դժուարութեամբ հասնելով ի Հռոմ՝ կ'առնու յԱնտոնիոսէ, արևելից եռապետէն, Հրէաստանի թագաւորութիւնը և հռոմայեցի օգնական զօրօք կու գայ (37) ի Հրէաստան զօրավարութեամբ Բենտիդիոսի (Վենտիդիոս)։ Պարթևք առնլով աւար բազում, բաց ի գանձուցն Հիւրկանու, և ինչ որ թողած էր Հերովդէս՝ բազմութեամբ գերեաց, մանաւանդ Մարիսա անուն հարուստ քաղաքէն զոր պաշարմամբ առին՝ կը մեկնին Հրէաստանէ։ Հրեայ գերիք, զորս կը յիշեն Բուզանդ և Խորենացին բերեալ Տիգրանայ և բնակեցուցեալ ի Վան և ուրիշ քաղաքներ՝ չէին այս արշաւանին ժամանակէն, յորում Տիգրան չունէր մասն և ոչ իսկ կենդանի էր, այլ յառաջ քան զայն, մինչ Տիգրան էր տէր Ասորւոց երկրին և Պաղեստինու։ Բուզանդ գիտէ հրեայ գերութիւն բերուած ի Հայս առ Տիգրանաւ.—«Խաղացուցին (Պարսիկք) յԱրտաշատ քաղաքէ ինն հազար տուն երդ Հրեայս, զորս ածեալն էր գերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ յերկրէն Պաղեստինացւոց։... Առ.

նուխն և զՆրուանդաշատ և խաղացուցանէին անտի ութ հազար երդ Հրէայս։... Առին և զամուր քաղաքն Վան, որ ի գաւառին Տոսբայ, և խաղացուցանէին անտի ութևտասն հազար երդս Հրէայս։ Զայս ամենայն բազմութիւն Հրէից ածեալ էր յերկրէն Պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց ի ժամանակին՝ յորժամ գերեաց նա և ած ի Հայս զքահանայապետն Հրէից զՀիւրկանոս զառաջին ժամանակաւ։ Եւ էած մեծ արքայն Տիգրան զամենայն զհրէութիւնն զայն, բնակեցոյց ի քաղաքսն Հայոց յիւրում դարուն ի ժամանակին» (Բուզ. Դ. ԾԵ.)։ Նոյնպէս Խորենացին.—«Իսկ թագաւորն Հայոց Տիգրան զգերութիւնն Հրէից նստուցեալ յԱրմաւիր և յաւանին Վարդգէսի որ ի վերայ Քասաղ գետոյ» (Խոր. Բ. ԺԶ.), և այլուր (Բ. ԺԹ.), «ԶՄարխացւոց քաղաքն գերի առեալ... և զՀիւրկանոս կապեալ ածին Տիգրանայ հանդերձ գերութեամբն. և Տիգրան հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զգերին Հրէից որ ի Մարխացւոց՝ ի քաղաքն Շամիրամայ»։ Թէ Տիգրան բերած էր հրեայ գաղթականներ ի Հայս՝ այս կը թուի արդարև ճշմարիտ. բայց Խորենացին որպէս և Բուզանդ, առնլով, չենք գիտեր ինչ, թերևս աւորական աղբերէ, և շփոթելով Տիգրանայ տէրութիւնն յԱսորիս և ի Պաղեստին Պարթևաց արշաւանքին հետ, որ եղաւ այն երկիրները՝ Հիւրկանու գերութիւնն ՝ևս կ՚ընծայեն Տիգրանայ, որպէս թէ Բարզափրան ոմն Ռշտունի հայ բռնեց զՀիւրկանոս և ղրկեց ի Հայս առ Տիգրան, և քահանայապետն հրեայ յետ մնալոյ ի Հայս՝ յետոյ ուրեմն առ Արշամաւ արձակուեցաւ գաղտ ի ձեռն Ենանոսի (թերևս Անանիա) ուրումն Հրէի, Բագրատունի իշխանի ըստ Խորենացւոյն։ Այս ամենայն է արդարև մին այն աւորական առասպելներէն, որովք լցեալ է մեր յայնժամու պատմութիւնն։

Յովսեպոս հրեայ պատմիչ ժամանակակից կամ գրեթէ ժամանակակից՝ զՀիւրկանայ կը պատմէ այսպէս. «Տեսաք, ասէ, թէ զիարդ Բարզափառնէս և Բակուր, զօրավարք զօրուն Պարթևաց, կալան զՀիւրկանոս քահանայապետ և զՓասայէլ զեղբայր Հերովդի, որ չոգաւ զիւրովի առ չժուժել ամօթոյ գերութեանն։ Մնայ մեզ արդ ասել, թէ զիա՛րդ Հիւրկանոս եղաւ յազատութեան և եկն դառնել զՀերովդէս յետ կալոյ սորա թագաւոր։ Հիւրկանոս ածեալ առ Հրահատ Դ. արքայ Պարթևաց (36—9)՝ մեծապատիւ մեծարեցաւ ի նմանէ վասն ազնուականութեան տոհմին, և արձակեալ ի կապանացն՝ առ հրաման բնակելոյ ի Բաբելոն, ուր կային բազմութիւնք Հրէից։ Ոչ միայն որ բնակեալն էին ի մեծի քաղաքի անդ պատուէին զնա իբրև զքահանայապետ և թագաւոր իւրեանց, այլ և այլ ամենայն Հրեայք, որ բնակէին յայնկոյս Եփրատայ՝ մա-

տուցանէին նմա փնոյն մեծարանս։ Իբրև լուաւ նա ղթագաւորել Հերովդի՝ ցանկացաւ դառնալ ի հայրենիսն, և ընկալաւ հրաման ի Հրահատայ, թէպէտ բարեկամք նորա շատ եդին նմա ի մտի՝ կալ մնալ անդէն. նա և Հերովդէս իբրև գիտաց զխորհուրդ Հիւրկանայ՝ առաքէր զՍարամաղղա ոմն առ Հրահատ բազում ընծայիւք, մինչև Հրահատայ հաւանեալ արձակէր զնա, և որ ի Բաբելոն բնակեալ Հրեայքն էին՝ տային զծախս ճանապարհին։ Հերովդէս մեծարեաց զնա յոյժ առ երեսս, մինչև տալ նմա զառաջին բարձն ի ժողովս, և զոր ինչ պարտն էր առնել առնէր, առ չտալոյ նմա կասկածանս զդաւոյն զոր նիւթէր նմա գաղտ։...Յետ պարտութեանն Անտոնեայ առ Ակտիոնի, Հերովդէս կասկածեալ յՕգոստեայ, թէ գուցէ ընկենուցու զնա յիշխանութենէն ի վրէժ բարեկամութեանն զոր ունէր Հերովդէս ընդ թշնամւոյ նորա Անտոնեայ՝ ետ սպանանել զութսնամենին Հիւրկանոս, իբրև այն թէ գաղտ ի բանի լեալ ընդ Մաղքայ կուսակալի Արաբացւոց՝ կամէր դաւ գործել նմա։ Այսպէս վախճանէր Հիւրկանոս զկեանս իւր, որ այնպէս լի եղև տառապանօք» (Յովս. Նախն. պտմ. ԺԵ. 9)։

Այս է զՀիւրկանայ Յովսեպոսի պատմութիւնն, զորոյ վաւերականութենէն դժուարին է կարծենք տարակուսել, մանաւանդ ի շնորհս Խորենացւոյն։ Բայց և այնպէս քերթողահայրն մեր կուտայ մեզ այս պատմութիւնն այլակերպ և այլագոյն, մուծանելով անձինս, որ կամ փոխուած են (Բարզափրան՝ փոխանակ Բարզափառնեայ), և կամ ամենևին չկան (Արշամ)։ Ըստ Խորենացւոյն Բարզափրան Ռշտունի, սպարապետ Տիգրանայ, որ չունի ամենևին մասն այն գործերուն մէջ՝ բռնելով դաւով կը ղրկէ առ Տիգրան, արդէն մեռած՝ զՀիւրկանոս կապեալ, որ կը մնայ ի Հայս՝ մինչև Ենանոս ոմն Բագրատունի, ասպետ թագակապ, հրեայ, յուսով առնլոյ հաւրիւր քանքար՝ կ՚արձակէ զՀիւրկանոս, և չկրնալով ընդունել կաշառը, կը տանջուի թագադիր ասպետն յԱրշամայ. (պիտակ անձն, Աբգարու կարծեցեալ նամակին առ Քրիստոս Ուշամայն, կարդացուած Արշամայ։ Բայց այս պատմական խաղերուն առեղծուածը պիտի լուծուի այլուր մենէ տրուած ակնարկութիւններով)։

**Ե.** Տիգրանայ յաջորդեց որդին Արտաւազդ (36—34), որ հաւանականապէս էր բարձակից հօրն առ կենդանութեամբ իսկ նորա։ Ստրաբոն, գրեթէ ժամանակակից՝ գիտէ զԱրտաւազդ, զորմէ կը գրէ այսպէս. «Յաջորդին Տիգրանայ, Արտաւազդայ յաջողէր՝ ցորչափ եկաց նա բարեկամ Հռոմայեցւոց. այլ մատն լեալ նորա Անտոնեայ ի շնորհուկս Պարթևաց ի պատերազմին Անտոնեայ ընդ Պարթևս՝ ելոյծ չարաչար վրէժս ընդ յանցանացն։ Ածեալ յԱնտոնեայ յԱղեք-

սանդրիա շղթայիւք՝ ածաւ շուրջ ի քաղաքի անդ զհետ կառաց յաղթողին, ապա արկաւ ի բանտ, ուր յետ ծիւրելոյ ժամանակս ինչ՝ սպանաւ ի սկսանել կռուոյն Ակտիանի» (Ստր. ԺԱ. 14. 15)։

Ստրաբոնի այս համառօտ տեղեկութիւնն զԱրտաւազդայ՝ ոչ միայն կ՚ակնարկէ, այլ կը հաստատէ ևս զպատմութիւն յոյն և հռոմայեցի պատմագրաց ոմանց, Պլուտարքոսի, Դիովնի, Ապպիանու, թէ յետ մեծի պարտութեանն Կրասոսի՝ Հռոմայեցիք յղեցին զԱնտոնիոս զօրօք, կամ ինքն Անտոնիոս, իբրև տէր արևելից՝ խաղաց անձամբ ի վերայ Պարթևաց, առ Հրահատաւ Դ. (Արշակ ԺԵ, 36-է նախ քան զՔր. մինչև 1 յետ Քրիստոսի) յաջորդաւ Որոդայ։ Անտոնիոս կը խնդրէր ի Հրահատայ յետս հռոմէական արծուէնշան դրօշներն և գերին, զոր առած էին Պարթևք ի պատերազմին Կրասսեայ։ Հրահատ մերժեց արհամարհանօք Անտոնիոսի խնդիրն, ասելով թէ թոյլ կու տար նմա միայն անվնաս երթալ երկրէն։ Արտաւազդ առ ահին Անտոնեայ՝ որ մտած էր ի Հայս ընդ որ կամէր անցանել ի Պարթևս՝ կը թուի ստիպեալ առաջնորդել Անտոնեայ հայազունդ զօրօք. բայց գաղտ միաբանեալ ընդ Հրահատայ, կամ ըստ Ստրաբոնի, ինչպէս տեսանք՝ «մատն լեալ Անտոնեայ ի շնորհուկս Պարթևաց», թերևս և թելադրեալ Հոկտաւիանոսէ որ էր ոսոխ Անտոնեայ՝ մոլորեցոյց զզօրս նորա, որ չարաչար յաղթուելով դարձաւ կորանօք յետս։ Անտոնիոս զԱրտաւազդ համարելով պատճառ այս պարտութեան՝ եկաւ բազմութեամբ զօրաց ի Հայս, և բռնելով դաւով զԱրտաւազդ հանդերձ որդւովքն՝ տարաւ պարգև իւր տարփածուին Կղէոպատրայ ի ձաղանս։ Զայս կը յիշէ նաև Յովսեպոս (Պատմ. Նախն. ԺԵ. 5). — «Կղէոպատրայ յետ գնալոյ ընդ Անտոնեայ մինչև ցԵփրատ ի խաղալն նորա զօրօք ի վերայ Հայոց՝ եկեալ յԱպամէ և ի Դամասկոս՝ ցանկացաւ տեսանել զՀրէաստան»։ Եւ սակաւ մի յետոյ ասէ. «Յետ նուաճելոյ Անտոնիոսի զՀայս, առաքէ կապանօք յԵգիպտոս զԱրտաւազդ, զորդի Տիգրանայ հանդերձ որդւովք նորա և տայ զնա ի պարգև Կղէոպատրայ հանդերձ մեծագին աւարօքն, զոր առ նա յաշխարհէն յայնմանէ»։ Զէ անգէտ այսմ և Տակիտոս, որ և ոճիր կ՚անուանէ Անտոնիոսի այն գործը. — «Հայք միտէին մերթ ի Հռոմայեցիս և մերթ ի Պարթևս, յորմէհետէ Անտոնիոս գործեաց զոճիրն, ընդ անուամբ բարեկամութեան ընկեցեալ ի հաղբս զթագաւոր նոցա զԱրտաւազդ՝ արկ զնա ի շղթայս»։ Անտոնիոսի ձախող արշաւանաց վրայ բաւական է յիշել սա համառօտ տեղեկութիւնն ի Վելլէոսէ Պատերկուղոսէ լատին պատմչէ, որ ծաղկեցաւ առ Տիբերիւ. «Իբրև Անտոնիոս երեքտասան լեգէոնօք մտանէր ի Հայս և անտի ապա

ի Մարս կռուել ընդ Պարթևաց՝ թագաւոր նոցա հարաւ նմա ի դիմի։ Անտոնիոս կորոյս նախ լեգէոնս երկուս, զկահ և զկազմած պատերազմին, զսպասաւորսն և զտեղակալ իւր Ստատիանոս։ Յետ սակաւ միոյ հանդերձ ամենայն զօրօքն, որոց երիր մասն կորեաւ՝ անկանէր յանհնարին տագնապ մինչև չունել ակն ապրելոյ. հազիւ ուրեմն ազատէր խրատու ուրումն հռոմայեցւոյ, որ անկեալ էր գերի Պարթևաց ի ժամանակի պարտութեանն Կրասսեայ։ Այրս այս, որոյ բոյս բարուցն չէր ամենևին փոխեալ ընդ բախտին՝ մատուցեալ գիշերայն առ մին ի պահնորդաց Հռոմոց՝ ազդ առնէր դառնալ յուղւոյն, ընդ որ դէմ եդեալն էր նոցա երթալ, և ունել այլ ճանապարհ ընդ անտառս։ Այս խրատ զերծոյց զԱնտոնիոս և զզօրս նորա, որոց չորիր մասն էր կորուսեալ, որպէս և երիր մասն սպասաւորացն և գերեաց, և գրեթէ բովանդակ կարասին։ Այլ Անտոնիոս յաղթութիւն անուանէր զայս փախուստ, զի այն իսկ ապրեցոյց զնա։ Յետ երից ամաց եկեալ նորա ի Հայս՝ կալաւ հնարիւք զթագաւոր երկրին զԱրտաւազդ, զոր կապեաց շղթայիւք, այլ շղթայիւք ոսկւոյ ի պատիւ թագաւորութեան նորա» (Վէլ. Պատ. Բ. 82)։

Զանցս Հայոց Անտոնիոսի արշաւանին ժամանակ մինչև ի մահն Արտաւազդայ՝ ընդարձակագոյն ևս կը պատմէ Դիոն Կասսիոս։ Յետ պատմելոյ զգործս Անտոնեայ յԱսորիս զկնի պարտութեան և մահուն Կրասոսի՝ ասէ. «Իսկ առ Պարթևս այլ իմն նոր կերպարանս առնուին իրքն։ Որոդէս թագաւոր նոցա, վաստակեալ տիօքն և ցաւովք ընդ մահն Բակրոյ՝ հրաժարէր յիշխանութենէն ի շնորհս Հրահատայ, երիցագունին յորդւոց անտի որ մնացին նմա։ Առեալ սորա զիշխանութիւնն՝ լինէր չար քան զամենայն մարդիկ. տայր սպանանել զեղբարս իւր, զծնեալսն ի դստերէն Անտիոքոսի, զի քան զնա առաւել էին նոքա առաքինութեամբ, որպէս և ազնուականութեամբ ի մօր կուսէ. սպան իւրով իսկ ձեռամբ զՈրոդ, որ չէր հաճ ընդ սպանութիւնսն։ Զայնու ժամանակաւ Անտոնիոս խաղայր ի վերայ Վրաց, և յաղթեալ թագաւորի նոցա Փառնաւազայ՝ առնէր զնա դաշնակից. յետոյ մտեալ նովաւ հանդերձ յԱղուանս՝ հարկանէր զբնակիչսն և զթագաւոր նոցա զԶոբար, զոր և ձգէր յիւր կողմն։... Ընդ Հրահատայ ևս մտանէր ի պայմանս խաղաղութեան, խոստացեալ կռել դաշինս՝ եթէ դարձուսցէ զնշանսն և զգերիս կալեալ ի պատերազմին ընդ Կրասսեայ։ Այսպէս խաղայր յառաջ մինչև ցԵփրատ, զոր կարծէր առանց պաշտպանութեան. այլ իբրև գտանէր զերկիրն ամենայն ուստեք զգուշացեալ խնամով՝ խոյս տուեալ խաղայր ընդդէմ Արտաւազդայ արքային Մարաց,

ըստ թելադրելոյ անուանակցին նորա արքային Հայոց Մեծաց։ Անդ լուեալ, եթէ գնացեալ էր Մարն հեռի յիւրմէ երկրէն ի թիկունս օգնականութեան Պարթեւին՝ թողեալ զկաՀ և զկազմած, զմասն մի ևս ի զօրուէն ընդ հրամանատարութեամբ Ոպպեայ Ստատիանեայ, տուեալ նմա պատուէր գալ զիւր կնի՝ ինքն հանդերձ հեծելովքն և ընտիր ընտիր հետևակօք աճապարէր զչուն, յուսացեալ նուաճել զերկիրն ամենայն. և իբրև հասանէր յանդիման քաղաքին որ նիստն էր թագաւորին՝ կանգնեալ պատնէշս սկիզբն առնէր պաշարմանն։ Իմացեալ զայս Պարթեւին և Մարի՝ թողին զնա սպառել զզօրութիւն իւր, քանզի պարիսպք քաղաքին էին ամուր, և բերդականք թուով բազում, և յանկարծ անկեալ ի վերայ Ստատիանու որ վաստակեալ էր ի ճանապարհէն՝ հարկանէին սատակէին զամենեսին։ Զայս վճարել կարացին նոքա, զի Հայն չէր ընդ Հռոմայեցւոց. թէպէտև ըստ պատմելոյ ոմանց կարող էր նա օգնել Հռոմայեցւոց՝ այլ չարար այնպէս, և փոխանակ յարելոյ յԱնտոնիոս՝ առանձնանայր յերկիր իւր։ Անտոնիոս յառնուլ անդ զգոյժն ի Ստատիանեայ՝ փութացաւ յօգնութիւն նոբա, այլ հասեալ անդ անդ ուրեմն ոչ այլ ինչ գտանէր բայց դիակունս։ Զահի հարաւ Հռոմայեցին, այլ զի ոչ դիպեցաւ բարբարոսաց ի ճանապարհին՝ համարէր եթէ խոյս տուեալ էր նոցա առ ահի, և ոգի առ։ Յետ այնորիկ ի ճակատու ուրեմն զոր ետ ընդ նոսա՝ հանէր զնոսա փախըստեայս, զի պարսաւորքն Հռոմոց, որոց բազում էր թիւ և որոց հարուածքն հասանէին հեռագոյն ևս քան զնետս Պարթևաց՝ հասուցին վնաս մեծ զրահաւորաց իսկ նոցա, այլ չէր ինչ մեծ կոտորածն, զի բարբարոսքն ի նիւս երիվարաց աճապարէին ի փախուստ։ Անտոնիոս խաղայր միւսանգամ ի վերայ թագաւորանիստ քաղաքին և պաշարէր զնա առանց գործելոյ մեծ ինչ վնաս թշնամւոյն, այլ կորուսանէր զբազումս ի զօրացն եթէ յառաքելն զնոսա զպաշարէ և եթէ ածելով անձամբ անձին պատիժս պատուհասից բազմաց ի նոցանէ։ Արդարև ի սկզբան, մինչ յերկրէն հանէին նոքա զռճիկն՝ բաւէին և՛ գործոյ պաշարմանն և՛ հայթայթելոյ զիւրեանց պարէնն յապահովս. այլ իբրև սպառեցան արդիւնք երկրին, և զօրն Անտոնեայ ստիպէր երթալ հեռագոյնս զպաշարէ՝ յայնժամ դէպ լինէր, զի եթէ սակաւաւորք էին՝ ոչ միայն չկարէին բերել պաշար ըստ բաւականին, այլև սպանեալ ևս լինէին. իսկ եթէ երթային բազմութեամբ՝ պարիսպքն մնային թափուր ի պաշարելեաց, և բարբարոսքն ժամ դիպող զայն համարեալ՝ յարձակէին ի դուրս և զբազումս ի Հռոմայեցւոց սատակէին և զբազում մեքենայիւք հուր հարկանէին։

Այսպէս Անտոնիոս տայր զօրաց իւրոց զարի փոխանակ ցորենոյ, և ի տասն զինուորացն զմին տայր սպանանել։ Միով բանիւ, քան զպաշարեալսն պաշարիչն մանաւանդ կրէր վնաս... Եւ զի յայսր ամենայնի վերայ յամառեալ Անտոնեայ յառաջ մատուցանէր զպաշարումն՝ երկուցեալ Հրահատայ, թէ գուցէ հուսկ ուրեմն վտանգ ինչ քաղաքին հասուցանիցէ եթէ իւրով իսկ զօրութեամբ և եթէ օգնականօք զոր մարթէր գտանել՝ հրեշտակագնաց լեալ խօսէր ի խաղաղութիւն, յայտ արարեալ թէ պատրաստ էր կռել դաշինս։ Ուստի ետ պատասխանի հրեշտակացն առաքելոց յԱնտոնեայ՝ նըստեալ յաթոռ ոսկի, ձեռն ի լար անդր աղեղանն, և մեղադիր Հռոմայեցւոցն լեալ՝ խոստանայր շնորհել նոցա խաղաղութիւն, եթէ բառնայցեն վաղվաղակի զպաշարումն։ Ի լսել Անտոնեայ զպատասխանին՝ երկուցեալ ի գոռոզութենէն Հրահատայ, և յուսացեալ զի եթէ ի բաց կացցէ, դաշինք խաղաղութեանն կռեսցին՝ մեկնեցաւ առանց աւերելոյ զոր ինչ յօրինեալ էր ի գործ պաշարմանն, իբր այն թէ էր յերկրի դաշնաւորաց։ Այն ինչ մեկնեալ նորա՝ Մարք այրէին զմեքենայսն, և զպատնէշսն հիմն ի վեր տապալէին. և Պարթևք ոչ միայն չառաքեցին պատգամ խաղաղութեան, այլ և յեղակարծումն ի վերայ հասեալ՝ բազում չարիս Հռոմայեցւոցն հասուցանէին։ Անտոնիոս տեսեալ եթէ խաբեցաւ՝ չիշխէր միւսանգամ յղել պատգամաւորս. եդ ի մտի փութալ անկանել ի Հայս։ Զօրք նորա ի գնալն զնոր ճանապարհն՝ կրեցին բազում և անհնարին վիշտս վտանգաց։ Զու նոցա ընդ անծանօթ երկիրն ընդ այն լինէր լի վրիպակօք, նա և բարբարոսքն կալեալ զկիրճս, աւրեք ուրեք փոսս փորեալ և կամ արկեալ առաջի նոցա խոչ և խութ՝ տագնապեցուցանէին զնոսա ուր և երթային զջրոյ, և ոչ թողուին արօտս։ Եւ եթէ տեսանէին զճանապարհ Հռոմայեցւոցն յաջող՝ խոտորեցուցանէին զնոսա, հաւանեցուցեալ եթէ թշնամին ունի զճանապարհն, և տային նոցա խաղալ ընդ այլ կողմն ուր դարան գործեալ էր նոցա. այսպէս բազումք կորեան ի տառապանաց և ի սովոյ։ Էին ևս ի զօրուէն որ գաղտագնայց ի թշնամի անդր լինէին։ Ի նեղ մտեալ Հռոմայեցւոց՝ խորհեցան այլ իմն հնարս։ Յաւուր միում անկեալ յորագայթ, և մինչ նետք իբրև զկարկուտ տեղային ի վերայ նոցա՝ յանկարծ իմն զասպար առ ասպար կցեալ, և զձախոյ ծունկսն յեցուցեալ ընդ գետին՝ յօրինէին զայն զոր կրային կոչեն։ Բարբարոսքն, որոց չէր այնպիսի ինչ տեսեալ, համարեալ զՀռոմայեցիս անկեալս ի հարուածոց անտի նետիցն, և կարծեալ միով ևեթ հարուածով վճարել զիրսն՝ ընկեցին զկապարճս իւրեանց, և ոստուցեալ ի վայր յերիվարացն՝ եկին հուպ սուսեր ի

ձեռն խողխողել զնոսա միանգամայն։ Յայնժամ յոտն կայր փա-ղանգն ողջոյն, և ի տալ նշանին՝ անկանէր իւրաքանչիւր ի վերայ ախոյանին որ կայր մօտ, և այսպէս զինեալք՝ ընդ անզէնս, պատրաս-տեալք՝ ընդ որս չունէին ամենևին ակն, զինուորք լեգէոնականք՝ ընդ աղեղնաւորս, Հռոմայեցիք՝ ընդ բարբարոսս—գործէին նախ-ճիրս, մինչև մնացելոցն աճապարել ի փախուստ, և ոչ այլ ևս իշխել լինել նոցա հետամուտ։ Անտոնիոս այնուհետև չկրէր վիշտս յերեսաց թշնամւոյն, այլ ցուրտն տագնապէր զնա։ Ձմեռն էր, և լերինք Հայ-ոց, զորս կայր նմա հատանել անցանել՝ էին ծածկեալ մշտնջենաւոր սառնամանեօք։ Վիրաւորքն, որոց բազում էր թիւ՝ էին նմա մանա-ւանդ անհնարին աղէտք։ Թէպէտև էր զայրացեալ ընդ թագաւորն Հայոց զի եթող զնա, և լի էր քինու ընդդէմ նորա՝ անսայր և ողոքէր զնա, յուսով առնլոյ ի նմանէ պաշար և արծաթ։ Եւ զի չէր մարթ զօրուն երթալ այլ ևս երկայն ճանապարհ, մանաւանդ ձմերայնի, և վիշտ վտանգին տակաւին ի վերայ կայր՝ Անտոնիոս խօսէր համակ ողոքով ընդ թագաւորին՝ տալ նմա թոյլ ձմերել յերկրի նորա։... Ի սկզբան գարնայնոյն մեկնեցաւ Անտոնիոս և գնաց յԵգիպտոս։... Ի գալ ամին եդ արշաւանս ընդդէմ թագաւորին Հայոց, յուսացեալ յարքային Մարաց. քանզի թշնամացեալ սորա ընդ Հրահատայ, զի չետ նմա մեծ ինչ մասն յաւարէն և ոչ եդ նմա շուք, և կամե-ցեալ խնդրել վրէժս յորքայէն Հայոց, զի ած նա զՀռոմայեցիսն՝ խնդրեալ էր զբարեկամութիւն և զնիզակակցութիւնն Անտոնեայ։ Ուրախ լեալ ընդ այս Անտոնիոս՝ եմուտ ի դաշն ընդ Մարին, և սկիզբն առնէր հրաւիրել զՀայն իբրև բարեկամ՝ գալ գտանել զնա յԵգիպտոս, ուր խորհէր դիւրաւ իմն բառնալ զնա ի միջոյ. այլ իբրև կասկածեալ նորա չառ յանձն զհրաւէրն՝ Անտոնիոս խորհե-ցաւ այլով իմն օրինակաւ արկանել զնա ի խաբս։ Թագուցեալ զբարկութիւնն, թէ գուցէ բորբոքեսցէ զպատերազմն՝ պատճառա-նօք խաղալոյ միւսանգամ ի վերայ Պարթևաց՝ եթող զԵգիպտոս. այլ զճանապարհայն առեալ համբաւ, եթէ Հոկտաւիանոս գայր ի Հռոմայ՝ դառնայր այսրէն»։

Դիոն յետ պատմելոյ զգործս Հոկտաւիոսի, ոստխին Անտոնեայ՝ կը յաւելու. «Առ ի խնդրել վրէժս յաքքայէն Հայոց առանց բա-զում աշխատութեան՝ Անտոնիոս ի ձեռն Դեղլիոսի ուրումն խընդ-րէր զդուստր նորա ի կնութիւն որդւոյ իւրում Աղեքսանդրի, և խոստանայր նմա մեծամեծս, և ապա ի սկզբան գարնան գայր հասանէր յանկարծ ի Նիկոպոլիս Պոմպէի, և առաքեալ կոչէր զարքայն Հայոց պատճառանօք հարցանելոյ զխորհուրդ նորա և խնդրել օգնութիւն ընդդէմ Պարթևաց։ Ի չառնուլ նորա յանձն

գալ, կասկածեալ ի դաւոյն՝ Անտոնիոս առաքէր միւսանգամ զնոյն ինքն զԴեղղիոս խօսել ընդ նմա, և ինքն փութայր հասանել յԱրտաշատ։ Այսպէս և՛ ի ձեռն բարեկամաց, և՛ երկիւղիւ զօրացն, գրելով, ևս և գնալով ընդ նմա իբրև ընդ բարեկամի՝ ած զնա ի հաւան գնալ ի բանակ անդր նորա։ Անդ ձերբակալ արարեալ զնա՝ դնէր ի դիպահոջ առանց կապանաց, և տարեալ զնա անձամբ ուր գանձք նորա էին, զի թերևս մարթ իցէ առնուլ զայն առանց կռուոյ՝ պատճառէր թէ ոչ վասն այլ իրիք կալաւ զթագաւոր նոցա, բայց միայն զի արկանիցէ հարկս ի վերայ Հայոց ի փրկանս անձին և գահու նորա։ Սակայն որ պահէին զոսկին՝ ոչինչ անսացին նմա, և որոց զէն ի ձեռին կայր՝ ընտրեցին թագաւոր փոխանակ նորա զԱրտաշէս, զերէցն յորդւոց նորա· և Անտոնիոս կապէր զԱրտաւազդ արծաթի շղթայիւք, քանզի, որպէս թուի՝ ամօթ իմն համարեցաւ արկանել ի շղթայս երկաթիս զայր, որ թագաւոր լեալ էր։ Յետ այսորիկ յանկուցեալ զոմանս կամաւ, զայլս բռնութեամբ՝ լինէր տէր համօրէն աշխարհին Հայոց, զի Արտաշէս պարտեալ ի ճակատու ուրեք՝ խոյս ետ առ Պարթևս։ Յետ վճարելոյ զայս ամենայն և խօսելոյ զորդի իւր դստեր թագաւորին Մարաց, առ ածելոյ զնա առաւել իմն զիւրև՝ դարձաւ Անտոնիոս յԵգիպտոս, տարեալ ընդ իւր, թող զաւարն մեծ՝ զարքայն Հայոց հանդերձ կանամբ և որդւովք։ Խաղացուցանէր զնոսա առաջի իւր հանդերձ այլովք գերելովք իբրև ի ձաղանս յԱղեքսանդրիա, ուր ելանէր նա ի կառս. և թող զայլ շնորհսն զորս առնէր Կղէոպատրայ՝ ածէր առ նա զՀայն հանդերձ իւրովքն, կապեալ շղթայիւք ոսկւովք։ Տիկինն նստէր ի մէջ բազմութեան յատենի, որ զարդարեալ էր արծաթով՝ յաթոռ ոսկեղէն։ Բարբարոսքն չմատուցին նմա աղաչանս և ոչ եկիր պագին նմա, թէպէտև բռնադատեցան յոյժ և տուաւ նոցա յոյս ազատութեան։ Կոչէին զնա իւրով անուամբ, և այսու յայտ արարեալ զոգւոյն մեծութիւն՝ ստացան անուն պարծանաց, այլ սոյն այս լինէր պատճառք գնալոյ ընդ նոսա խստիւ։ Յետ ձաղանացն Անտոնիոս առնէր ընթրիս Աղեքսանդրացւոց, և ի մէջ ժողովրդեանն խռնելոյ նստուցանէր առ իւր զԿղէոպատրա և զորդիս նորա· ապա յետ բանս ինչ խօսելոյ՝ տայր հրաման անուանել զԿղէոպատրա «Դշխոյ թագաւորաց», և զՊտղոմէոս զկոչեցեալն Կեսարիովն՝ «Թագաւոր թագաւորաց»։ Տայր նոցա ի բաժին զԵգիպտոս և զԿիպրոս։ Այս եղև մասն նոցա, իսկ որդւոցն որ եղեն նմա ի Կղէոպատրայ՝ խոստանայր տալ—Պտղոմեայ՝ զԱսորիս և զամենայն երկիրն յայս կոյս Եփրատայ մինչև ի Հելլեսպոնտոս, Կղէոպատրայ՝ զԼիբէա, որ առ ընթեր կայ աշխար-

հին Կիւրենացւոց, և եղբօր նոցա Աղեքսանդրի՝ զՀայս և զերկիրն անդր քան զԵփրատ մինչև ի Հնդիկս, քանզի այնպէս իմն համարէր, եթէ իւր իցէ այն ամենայն։ Զայսօրինակ խօսէր նա ոչ յԱղեքսանդրիա միայն, այլև ի Հռոմ գրեալ ցուցանէր զոր միանգամ արարն։ Բայց և ոչ մին ի թղթոց նորա ընթերցաւ հրապարակաւ. բդեաշխքն Դոմիտիոս և Սոսիոս որ ի նորա կողմն էին՝ չեառուն թոյլ, թէպէտև կայսր (Հոկտաւիոս) շատ ստիպեաց զնոսա։ Այսպէս չեղև ծանօթ ոչինչ ի գրելոցն Անտոնեայ զՀայոց թագաւորէն, որում արգահատէր կայսր և էր բանագնաց լեալ ընդ նմա հակառակ Անտոնեայ»։

**7.** Ինչ որ պատմեցինք ի թագաւորութենէն Տիգրանայ մինչև ի գերութիւնն և ի մահ Արտաւազդայ (34) ըստ վկայութեան ժամանակակից և իբր ժամանակակից պատմագրաց, մանաւանդ Կիկերոնի, Ստրաբոնի և Յովսեպայ՝ կրնայ համարուիլ վաւերական։ Թէ ինչ եղան Հայք զկնի Արտաւազդայ՝ կը ցուցնէ մեզ Ստրաբոն համառօտիւ.—«Յետ Արտաւազդայ ոչ սակաւ թագաւորք կացին Հայոց ընդ պաշտպանութեամբ կայսեր և Հռոմայեցւոց, և այս պաշտպանութիւն տևէ տակաւին» (Ստր. ԺԴ. 11, 16)։ Զայս կը գրէր Ստրաբոն ի մէջ 30 և 37 ամաց քրիստոնէական թուականին, այսինքն Տիբեր կայսեր ժամանակ։ Զանցս Հայոց յետ Արտաւազդայ աւելի յայտնի կուտան մեզ ուրիշ պատմիչք, ժամանակակիցք կամ մերձաւորք ժամանակաւ։ Ըստ Դիոնի, ինչպէս տեսանք՝ իսկ և իսկ զկնի ձաղանացն Արտաւազդայ՝ Անտոնիոս կ'որոշէ թողուլ զՀայս առանձին թագաւորութիւն ընդ իշխանութեամբ որդւոյ իւրոյ Աղեքսանդրի մանկան, ծնելոյ ի Կղէոպատրայ, ընդ հովանեաւ կամ խնամակալութեամբ արքային Մարաց իւրոյ նիզակակցին, սահմանելով զդուստր նորա Յովտապէ ի կնութիւն Աղեքսանդրի (34)։ Մարք, այն է բուն Մարք և Ատրպատական, որպէս և Հայք և ուրիշ ազգեր՝ եղած էին ուրոյն թագաւորութիւններ յետ տկարանալոյ Սելևկեանց, մինչև յԱ. դարու քրիստոնէական թուականին նուաճեցան ի Պարթևաց կամ միացան ընդ նոսա։ (Կայ արդարև ի յիշատակ այսր դահեկան Անտոնեայ 34-էն նախ քան զՔր., «Ի միւում կողման գիր. Armenia devicta, Հայաստան յաղթեալ, և գլուխ Անտոնեայ հայ խուրիւ, և ի միւսում կողման՝ գլուխն Կղէոպատրայ և գիր. Կղէոպատրայ տիկնոջ թագաւորաց, որդւոց թագաւորաց» (Գաթըրճ. Տիեզ. Պատ. Բ. 94)։ Կը թուի սակայն, թէ այս որոշումն Անտոնիոսի չկարաց գործադրուիլ. քանզի ըստ Յովսեպոսի և ըստ Տակիտոսի, իսկ և իսկ զկնի Արտաւազդայ, գրեթէ նոյն տարին (34) կամ ամաւ միով յետոյ՝ եկաւ անդրանիկ որդին

Արտաւազդայ Արտաշէս, և օգնութեամբ Պարթևաց թագաւորին Հրահատայ Դ. յաղթելով Մարաց թագաւորին, յանձանձչին Աղեքսանդրի մանկան՝ առաւ հայրենի թագաւորութիւնը, մինչ Անտոնիոս ի կռուի էր ընդ ոսոխին իւրում Հոկտաւեայ։ «Արտաշէս, երէց որդին Արտաւազդայ, ի լսել անդ զհամբաւ պատերազմին (Անտոնեայ ընդ Հոկտաւիոսի), խոյս տուեալ՝ յետ մահու հօրն թագաւորեաց փոխանակ հօրն» (Յովս. Պատմ. Նախն, ԺԵ. 5)։ «Ապա (զկնի Արտաւազդայ) Արտաշէս նորին որդի կալաւ զթագաւորութիւնն օգնականութեամբ Պարթևաց» (Տակ.)։ Ինչպէս յառաջ առ մեծաւ Տիգրանաւ և առ Արտաւազդաւ՝ նոյնպէս առ Արտաշիսիւ նորին որդւով, որոյ թագաւորութիւնն տևեց մինչև 21, և առ յաջորդօք նորա ևս՝ Հայք թէպէտ միահեծան էին (և այս յայտնի է մանաւանդ ի տիտղոսէն «Արքայից արքայ» որ հայ ի դահեկանս նոցա)՝ չէին սակայն բոլորովին ազատ յազդեցութենէ Պարթևաց, որոց զօրութիւնն մեծ էր յարևելս յետ պարտութեանցն Կրասոսի և Անտոնեայ առ Հրահատաւ Դ։ Բայց ի գալ Աւգոստեայ յարևելս (29)՝ դարձեալ զօրացաւ Հռոմայեցւոց ազդեցութիւնն անդ։ Օգոստոս, ինչպէս կ'երևի պատմութենէն որ զկնի՝ ունէր մասնաւոր խնամ զՀայոց. իբրև դաստակերտ Հռոմայեցւոց կը համարէր զՀայոց աշխարհ։ Կրտսերագոյն որդիք Արտաւազդայ, եղբարք Արտաշիսի՝ փոխուած կը թուին ի Հռոմ յԱղեքսանդրիայ, ուր տարուած էին յԱնտոնեայ. քանզի Տիգրան, եղբայր Արտաշիսի, յետ ամաց ինչ, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև՝ածաւ ի Հռոմայ ի ձեռն Տիբերի առնուլ զթագաւորութիւն հօրն, և Օգոստոս, իբրև վերին իշխան Հայաստանի՝ կը թողու Արտաշիսի թագաւորել, և ապա յետ մահուան նորա կու տայ թագաւորութիւնը եղբօր նորա Տիգրանայ, մինչ կարող էր առնել նահանգ զՀայաստան.—«Ի սպանանել Արտաշիսի, յորժամ կարողն էի առնել (զՀայս) ընդ նահանգաւ՝ լաւ համարեցայ տալ զայն ցՏիգրան», ասէ (Կտակ Աւգոստ. տես ի ստորև)։ Բայց որովհետև հակառակ էր Արտաշէս Հռոմայեցւոց,—«թշնամի Հռոմայ վասն քինու հօրն», ըստ Տակիտոսի,—«մերժեաց զնա ինքնակալ Ներոն—այսինքն Տիբերիոս Կղաւդիոս Ներոն, որդեգիր Օգոստոսի—ի թագաւորութենէն» ըստ Յովսեպոսի. կամ ըստ Տակիտոսի՝ «սպանաւ յիւրոց ազգականաց»։ Զկնի մերժման կամ սպանման Արտաշիսի, Տիբեր հրամանաւ Օգոստոսի ըստ խնդրոյ Հայոց կը թագաւորեցունէ զորդի նորա զՏիգրան (20)։ «Տիգրան (յետ Արտաշիսի) տուաւ յԱւգոստեայ թագաւոր Հայոց, և ածաւ յերկիր իշխանութեան իւրոյ ի ձեռն Տիբերեայ Ներոնի» (Տակիտոս)։ Զայս գիտէ նաև Յովսեպոս. «Տիբեր, ասէ, եդ փո-

թանակ նորա (Արտաշիսի) զկրտսերագոյնն յեղբարց նորա որ կոչէր Տիգրան» (Յովս.)։ Դիոն և Սուետոն. «Առաքեալ (Տիբեր Օգոստոսէ) յարևելս զօրօք՝ ետ Տիգրանայ զթագաւորութիւնն Հայոց, և եդ նմա զթագն ի գլուխ՝ նստեալ յատենի իւրում (Սուետ. ի Տիբ. Թ.)։ Յայտնագոյնս՝ Դիոն.—«Իբրև բնակիչք միւսոյ աշխարհին Հայոց (այն է Մեծին Հայոց) տրտունջ լեալ զԱրտաշիսէ խնդրէին զՏիգրան զեղբայր նորա, որ էր ի Հռոմ՝ Օգոստոս առաքէր զՏիբեր վանել յերկրէն զԱրտաշէս և կացուցանել զՏիգրան։ Սակայն Տիբեր չլինէր ինչ նպաստ յայս գործ. զի մինչև եկեալ նորա՝ սպանեալ էր Հայոց զԱրտաշէս. այլ այս չեղև ինչ արգել Տիբերի պարծելոյ, որպէս թէ էր ինչ վճարեալ իւրով զօրութեամբ, մանաւանդ զի և զոհք ևս սահմանեցան վասն այսր» (Դիոն.)։ Զայս յաղթութիւն Տիբերի կ'ակնարկէ երգն Ովրատիոսի, որ (Ովր. ի թուղթսն, Ա. 12) ի յիշելն զարութիւնսն հռոմայեցի զօրավարաց՝ կը յիշէ և զՏիբերի նուաճելն զՀայս.—«Կանտաբրացին, լուր դու զայս, ՅԱգրիպպայ ձեռն է յորսայս. Իսկ Հայն Կղաւդեայ Ներոնեայ (Տիբերիոս Կղաւդիոս Ներոն) Գոռ զօրութեամբն անկեալ կայ» (Թարգմ. Գաթըրճ.)։ Վիրգիլիոս ևս ժամանակակից, ի կոչելն զԵրասխ «արտմող ընդ կամուրջ», pontem indignatus Araxes, կը կը թուի իմանալ, ըստ նոյն Գաթըրճեանի՝ զՀայս, իբր չհանդուրժողս լծոյն Հռոմայեցւոց.—«Զնոյն ակնարկէ և Վիրգիղիոս (Ենէակ. Ը. ի վերջ կոյս) յորժամ յօրինէ զնկարագիր վահանին զոր ետ, ասէ, Ենեայ՝ Աստղիկ ի դարբնոցէն Հեփեստեայ, յորոյ վերայ նկարեալ կային գործք և արութիւնք որդւոց և թոռանց Ենեայ. ընդ ազգսն նուաճեալս մի ըստ միոջէ՝ վիպին նկարեալ անդ և Դահք աննուաճելիք և Երասխ զայրագին և կոտորիչ կամրջաց (pontem indignatus Araxes), այս ինքն՝ Հայք սանձակոտորք ծառայութեան Հռոմայեցւոց» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 95)։ Ի հաստատութիւն այս դիպաց կան նաև դահեկաններ յամէն 20 ն. ք. զՔր., զորս մանր կը նկարագրէ Գաթըրճեան.—«Դիպող յոյժ, ասէ, ի հաստատութիւն պատմութեանս և անգին իմն յիշատակարանք վասն անցից Հայոց աշխարհին՝ են դահեկանք գեղեցիկք որ ի մուսարանս Եւրոպայ կան, ոսկի և արծաթի, ամենեքին դրոշմեալ ի սմին ամի (20 նախ քան զՔր.)։ Ի միում կողմանն նոցա է միշտ գլուխ Աւգոստեայ կամ միոյ ուրուք ի դից (Փերոնիայ, Բակքոսի), իսկ ի միւսում կողմանն կայ արձանագիր, երբեմն՝ *Հայաստան առեալ* (Armenia capta), և պատկեր՝ խոյր Հայոց թագաւորին և առ նմին մի կամ երկու կապարճք գեղեցիկք և աղեղն. երբեմն նոյնպէս՝ *Հայաստան առեալ*, և պատկեր ինչ այսպիսի, զի դիքն

յաղթութեան Թեւաւոր՝ երանս անձեալ ի վերայ ցլու սանձէ զնա, որով ակնարկի նուաճումն Հայոց աշխարհին յայնկոյս Տաւրոսի (որ թարգմանի՝ ցուլ) և առանձինն Տարօն նահանգի Հայոց, զոր կոչէին Հռոմայեցիք Taurantium կամ Taurauntium, մանաւանդ զի ըստ Ղիբանիոսի իսկ վկայելոյ՝ նշանակ Տաւրոս լերին էր ցուլ ինչ պղնձի յարեւելս. երբեմն նոյնպէս՝ Հայաստան առեալ և պատկեր՝ Ծփինքս մի կծկեալ նստեալ. և պատմեն իսկ Պղինիոս, Սուետոն և Դիոն՝ ի սկզբանն վարել Աւգոստեայ սփինքսագիր մատանեաւ ի կնիքս իւր. և երբեմն դարձեալ այսպիսի ինչ արձանագիր. Հայաստան այսրէն առեալ (Armenia recepta), Սքանչելւոյն Կեսարեայ որդի, և պատկեր՝ կին մի (նշանակ Հայաստան աշխարհի) ի ծնունդս։ Առաջինն և չորրորդն ի դահեկանաց աստի արծաթիք են, իսկ երկրորդն և երրորդ՝ ոսկիք։ Թող զերեսին արծաթի դահեկանսն, զոր արքն երեքին վերակացուք արքունի դրամահատութեան հատեալ են ի պատիւ Աւգոստեայ. ի միումն ի նոցանէ երեւեցուցանի Հայաստան իբրեւ կին անկեալ ի ծունս, խոյր Հայոց թագաւորին ի գլուխ իւր, և արձանագիր շուրջանակի՝ Սքանչելւոյն Կեսարեայ որդի, Հայաստան առեալ. և յայլսն երկոսին նոյնպէս Հայաստան ի կերպարանս կնոջ խոնարհելոյ ի ծունր, կարկառեալ առաջի զձեռսն, իբրեւ թէ զամենայն աւանդիցէ ի ձեռս յաղթողին։ Զսոյն իմն և քանիւք նկարէ Ովիդիոս ի Պոնտոսէ (ի Տրտմականսն, Ծ. 227) յասելն. Ա՛րդ խնդրէ Հայն խաղաղութիւն, ա՛րդ կարկառեալ մատուցանէ զաղեղնն։ Կայ միւս ևս դահեկան արծաթի ի մերում մուսարանի (ի Վանս Մխիթարեանց ի Վիէննա) դոյզնագիւտ յոյժ ի սմին ամէ (20 նախ քան զՔր.). քանզի է նշանակեալ ի նմա Իններորդ նուագն Զօրավարութեանն Աւգոստեայ, (այսինքն imp. VIIII, և ոչ VIII, որպէս ընթերցեալ իմն է Միոնէ ի վերայ օրինակի իրիք նորին դահեկանի գտելոյ ի մուսարանին Կօսլենի ուրումն ի Գաղիա). ի միում կողմանն է գլուխ Աւգոստեայ, և ի միւսումն՝ զինուոր Հայ կանգուն, նիզակ յաջումն և աղեղն ի ձախում՝ յեցուցեալ ի գետին, հայացի հանդերձիւ (կամ զրահիւք) և գլխանոցաւ, և գիր շուրջանակի՝ Caesar div. f., Armenia capta» (Գաթըրճ. անդ)։

Այս Տիգրանայ յաջորդեց որդին Տիգրան կրտսեր հանդերձ քերբն Երատոյիւ, որ էր միանգամայն կին նորա։ Տակիտոս յետ պատմելոյ, թէ Տիգրան յաջորդեց Արտաշիսի—«Արտաշէս սպանաւ դաւով յիւրոց ազգականաց, և Տիգրան տուաւ յԱւգոստեայ թագաւոր Հայոց և ածաւ յերկիր իշխանութեան իւրոյ ի ձեռն Տիբերեայ Ներոնի—»ինչպէս տեսանք վերը՝ կը յաւելու. «Սակայն աթոռն ոչ

մնայր ընդ երկար Տիգրանայ, և ոչ իսկ որդւոց նորա (Տիգրանայ կրտսերոյ և Երատոյի), զի ըստ սովորութեան բարբարոսաց՝ եղբայր և քոյր էին հաղորդք և՛ անկողնոյ և՛ իշխանութեան։ Ի Տիգրանայ կրտսերոյ և Երատոյէ կան դահեկաններ. դահեկան մի պղնձի, «ունելով ի միում կողմանն զպատկեր այսր Տիգրանայ թագ Հայոց ի գլուխ և գիր շուրջանակի՝ Βασιλευς βασιλεων Τιγρανης (արքայից արքայ Տիգրանէս), և ի միւսումն կողման պատկեր Երատոյայ և գիր շուրջանակի՝ Ερατω βασιλευς Τιγρανου αδελφη (Երատով Տիգրանայ արքայի քոյր)։ Կայ միւս ևս դահեկան նոյնպիսի և գիր շուրջանակի՝ Βασιλευς μεγας νεος Τιγρανης (թագաւոր մեծ կրտսեր Տիգրանէս)։

Տիգրան կրտսեր ևս կը մերժուի, հաւանականապէս ՚հակառակութեանն համար Հռոմայեցւոց դէմ, և կը դրուի Արտաւազդ ոմն։ Տակիտոս յետ պատմելոյ, թէ «աթոռն ոչ մնայր Տիգրանայ և ոչ որդւոց նորա են՝ կը յաւելու. «Այլ ոմն Արտաւազդ կացուցաւ յԱւգոստեայ»։ Աւելի ընդարձակ՝ Վէլլէոս Պատերկուղոս (Դպր. Բ. 94). «Յետ սակաւ միոյ (Տիբեր) առաքեալ յԱւգոստեայ զօրօք այց առնել արևելից և կարգել յարգարել զիշխանութիւն գաւառացն՝ եցոյց զամենայն ազգս առաքինութեան. անտի մտեալ զօրօք ի Հայս՝ արկ զայն ընդ իշխանութեամբ հռոմէական ժողովրդեան, և զթագաւորութիւն երկրին ետ Արտաւազդայ»։ Այս Արտաւազդայ անուան ևս կայ դահեկան, ի միում կողման պատկեր նորա թագ ի գլուխ, և ի միւսումն՝ Յաղթութիւն թևաւոր և գիր շուրջանակի—Βασιλεως βασιλεων Αρταυασδου։ Այս ուղղագրութեան, ինչպէս նաև դրոշմին համար, որ ունի նմանութիւն դրոշմի դահեկանին Տիգրանայ կրտսերոյ և ոչ մեծին Տիգրանայ. դարձեալ թևաւոր Յաղթութեան համար, որ է նշանակ յետնագոյն հռոմէական ժամանակի և ոչ ժամանակին առաջնոյ Տիգրանայ և Արտաւազդայ՝ կը հետևցունէ Գաթըրճեան, թէ այն դահեկան ա՛յս Արտաւազդայ է և ոչ առաջին Արտաւազդայ, որդւոյն և յաջորդի Տիգրանայ մեծի.—«Յոյժ իսկ հաւանութեան է, թէ ոչ Արտաւազդայ առաջնոյ, այլ այսմ իսկ Արտաւազդայ անկ է դահեկանն նկարագրեալ վերագոյն, էջ 86, որպէս ցուցանէ նմանութիւն դրոշմին ընդ դրոշմի դահեկանին Տիգրանայ կրտսերոյ առաջին աթոռակալի նորա, քանզի ի դէպ է, թէ ի միոջէ արուեստագիտէ իցեն երկոքին, մանաւանդ զի և անունն Արտաւազդայ է գրեալ առաւել ըստ հռոմայեցի հնչման Αρταυασδου, և ոչ Αρταβασδου, որպէս գրէին արդեօք յոյն արուեստագէտք դրամահատութեան՝ եթէ էր Արտաւազդն Ա. յաջորդ Տիգրանայ մեծի, որոյ դահեկանացն և

*դրօշմն ևս այլ իմն նկարագիր ունի»։* (*Գաթըրճ. Պտմ. Տիեզ. Բ.* 96, *ծան.* 3)։

*Այս Արտաւազդայ համար ասէ Տակիտոս, թէ «արկաւ յաթոռոյն ոչ առանց մերոյ կորստեան։ Յայնժամ Գայիոս Կեսար ընտրեցաւ խաղաղեցուցանել զՀայս, և ետ զայն Արիոբարզանայ Մարի, որոյ և՛ գեղն և՛ քաջութիւն հաճոյ էին Հայոց»* (*Տակ.*)։ *Զնոյն կը յիշէ և Վելլէոս Պատերկուղոս* (*Բ.* 102). *«Գայիոս եմուտ ապա ի Հայս։ Մուտ նորա եղև յաջող, այլ յետոյ յանզգոյշս իմն մատուցեալ ի խօսս մօտ յԱրտագերս՝ խոցեցաւ կարեվէր ի զխտան յԱդդոնէ ումեմնէ»։ Ի բանից աստի Տակիտոսի և Վելլէոսի կը տեսնուի, թէ մերժումն Արտաւազդայ եղաւ Հայոց կողմանէ ապստամբութեամբ, որ մեծ վնաս տուած կը թուի Հռոմայեցւոց։ Ապստամբութիւնը կը թուի եղած թելադրութեամբ Տիգրանայ, որոյ օգնական էր Հրահատակ արքայ Պարթևաց* (*Արշակ ԺԶ.* 9—14). *քանզի ըստ Դիոնի՝ կը գտնենք զՏիգրան միւսանգամ ի Հայս և զՀրահատակ միջամուխ ի գործս Հայոց, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։ Օգոստոս կ՚ստիպուի ղրկել միւսանգամ զՏիբեր։ Զայս կը ցուցնէ բան Դիոնի, թէ Օգոստոս «ետ Տիբերի իշխանութիւն տրիբունական վասն ամաց հնգից, և յանձն արար նմա զհոգ աշխարհին Հայոց որ յետս կացեալ էր»։ Բայց երբ Տիբեր ընտանեկան գժտութեանց պատճառաւ առանձնացաւ ի Հռոդոս, ինչպէս կը պատմէ նոյն Դիոն՝ Օգոստոս յանձնեց Հայոց գործը որդեգրին իւրում Գայիոսի։ Մինչև եկեալ Գայիոսի՝ Տիգրան կրտսեր կը մեռնի ի կռուի, և աթոռակից նորա և քոյր Երատոյ կը հրաժարի, և Հրահատակ առ ահին ի Հռոմայեցւոց՝ յետ կը կենայ ի Հայոց։ Այսպէս Դիոն. «Լուեալ Հրահատակայ, եթէ Գայիոս էր յԱսորիս իբրև բդեաշխ, կասկածեալ ևս յիւրոց հպատակաց, թէ երկնէին ի վաղուց հետէ խորհուրդ վատ զնմանէ՝ փութայր առնել խաղաղութիւն, յանձն առեալ ի բաց կալ ի Հայոց։ Բայց թէպէտ և սպանեալ էր Տիգրան ի պատերազմի ընդդէմ բարբարոսաց, և Երատոյ հրաժարեալ յիշխանութենէն՝ Հայք, իբրև տուաւ նոցա թագաւոր Արիոբարզանէս ոմն Մար՝ ետուն պատերազմ յամին երկրորդի. այլ ոչինչ գործ կարևոր մարթացան վճարել, բայց միայն զի Ադդոն ոմն որ բռնացեալ ունէր զԱրտագերս՝ ձգէր զԳայիոս մինչև առ պարսպաւ քաղաքին, որպէս թէ զգաղտնիս ինչ Պարթևին ունէր ի վեր հանել, և վիրաւորեաց զնա։ Յայնժամ Արիոբարզանէս, և յետ մահու նորա, որ ոչ կարի յամեաց՝ որդի նորա Արտաւազդ առին զՀայս յՕգոստեայ և ի ծերակուտէն»* (*Դիոն*)։ *Զայս յայտնագոյն ևս կը ցուցնէ Սեքստոս Րուփոս* (*ԺԹ*)։ *«Առ Հոկտաւիանոսն կայ-*

սերաւ Աւգոստեաւ Հայք յարեան հակառակ մեզ միաբանութեամբ Պարթեւաց։ Գայիոս Կեսար, թոռն Աւգոստեայ՝ առաքեցաւ յարեւելս զօրօք, եւ ի շնորհս մեծութեան հռոմէական-անուան՝ ցածոյց վաղվաղակի զապստամբութիւնն։ Հայք որ յայնժամ հզօրագոյն էին քան զՊարթեւս՝ եղեն նմա անձնատուր. եւ նա ջանայր, ըստ օրինակին տուելոյ ի Պոմպէոսէ՝ դատաւորս կացուցանել ազգացն այնոցիկ, մինչ Դոմնէս ոմն, զոր կարգեալ էր թագաւորն վերակացու Արտագերից՝ եկն մատուցանել նմա պատճառանօք մատնելոյ զտէր իւր՝ գիր, ուր գրեալ կայ, ասէր, համար գանձուց թագաւորին. եւ մինչ զօրավարն հռոմայեցի ընթեռնոյր մտադրութեամբ մեծաւ՝ Դոմնէս յարեաւ ի վերայ նորա եւ հար զնա դաշունիւ։ Նենգաւորն սատակեցաւ արդարեւ ի զօրականէն, բայց Գայիոս վիրաւորեալ մեռաւ ի դարձին իւրում յԱսորիս»։ Արիոբարզան կը մեռնի, եւ որդին Արտաւազդ, որ նմա յաջորդեց հաճութեամբ Հռոմայեցւոց՝ կը մերժուի. յայնժամ Օգոստոս կը ղրկէ Տիգրան զոմն արշակունի, այսինքն ի զաւակէն Արտաքսիասայ։ Զվախճանէն այս Տիգրանայ չենք գիտեր ստոյգ ինչ, բայց յետ նորա Երատոյ առաւ միւսանգամ թագաւորութիւնը։ Ապա Հայք տաղտկալով ի նմանէ եւս՝ մերժեցին, եւ մնացին առանց իշխանի մինչեւ Վոնոն, զորմէ ստորեւ։ Տակիտոս չյիշեր զորդին Արիոբարզանայ զԱրտաւազդ. կը թուի ակնարկել սակայն, թէ ունեցաւ նա յաջորդ իւր տոհմէն, քանզի ասէ. «Արիոբարզանէս ըստ դիպաց իմն (այսինքն բնական մահուամբ կամ ի պատահարէ իմեքէ) մեռանէր, եւ տոհմն նորա մերժէր»։ Տակիտոս չյիշեր նաեւ զվերջինն Տիգրան արշակունի, այլ անմիջապէս կ'անցնի յԵրատոյ, վերջինն ի ցեղէն Արտաքսիասայ, որով կը մարի Արտաքսիասեան (Արտաշէսեան) հարստութիւնն։ Ուստի յետ ասելոյ Տակիտոս, թէ «տոհմն Արիոբարզանայ մերժէր»՝ կը յարէ. «Հայք փորձեցին յայնժամ զիշխանութիւն ուրումն կնոջ, որում անունն էր Երատոյ, բայց եւ զնա արտաքսեցին վաղվաղակի. ապա անկեալ ի վարանս եւ յանիշխանութեան, ոչ այնչափ ազատք որչափ անտէրունչք՝ եդին հուսկ ուրեմն յաթոռն զփախստեայն Վոնոն»։ Բայց կարեւորագոյն յիշատակարանն պատմութեան Հայոց այնր ժամանակին, այն է կտակն Աւգոստեայ՝ կը յիշէ եւ՛ զԱրտաւազդ որդի Արիոբարզանայ, եւ՛ զՏիգրան վերջին արշակունի, բայց չյիշեր զԵրատոյ, առ որով Օգոստոս կը թուի մեռեալ։ Տեսնենք այժմ Օգոստոսի կտակը, որ, որպէս ասացաք՝ կարեւորագոյն յիշատակարանն է այնր ժամանակի անցից Հայոց։ «ԶՄեծն Հայաստան, ասէ, ի սպանանել թագաւորի նորա Արտաքսեայ (Արտաշիսի, որդւոյ Արտաւազդայ), յորժամ կարողն էի առնել ընդ նահանգաւ՝

լաւ համարեցայ ըստ օրինակի նախնեաց մերոց տալ զայն թագաւորութիւն ցՏիգրան որդի Արտաւազդայ, թոռն Տիգրանայ արքայի (մեծի), ի ձեռն Տիբերեայ Ներոնի, որ որդեգիր իմ էր յայնժամ։ Յետ այնորիկ յորժամ յետս եկաց և ապստամբեաց ազգն այն՝ նուաճեցի ի ձեռն Գայեայ որդւոյ իմոյ, և ետու ի ձեռս Արիոբարզանայ, որդւոյ Արտաւազդայ արքայի Մարաց զի առաջնորդեսցէ, և յետ նորա մահուն՝ որդւոյ նորա Արտաւազդայ։ Իբրև սա սպանաւ՝ զՏիգրան որ էր յարքունի տոհմէ Հայոցն՝ առաքեցի ի դոյն թագաւորութիւն» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 97. ծան. 2)։ Չկըտակէն Աւգոստեայ Գաթըրճեան ասէ անդ այսպէս. «Սոցին երաշխաւոր, և գրեթէ համօրէն իսկ պատմութեանցս՝ գեղեցիկ վկայ կայ անուանեալ Յիշատակարանն Անկիւրական, այսինքն արձանագիր տաճարին կանգնելոյ յԱնկիւրա Գաղատացւոց ի պատիւ Աւգոստեայ (Σεβαστεία, Augustea), յորում կայ քանդակեալ մասն ինչ կտակին Աւգոստեայ, զոր էր նորա յանձն արարեալ Վեստեան կուսանաց, զի տացեն ծերակուտին (Տակիտ. Ա. գլ. Ը.)»։

Յ. Վկայութիւններէն, զորս բերաք ժամանակակից պատմագիրներէ, և նշանաւորագոյններէն, նաև վաւերական յիշատակարաններէ՝ որպիսի են դահեկանք՝ յայտնի եղաւ, թէ իսկ և իսկ յետ կապանացն Արտաւազդայ Ա-ոյ (34) տիրեցին Հայոց ընդ ձեռամբ Հռոմայեցւոց թագաւորք ութ. —

1. Արտաշէս, երէց որդին Արտաւազդայ (33—21).

2. Տիգրան Բ, եղբայր Արտաշիսի, ի ձեռն Տիբերի Կղաւդեայ հրամանաւ Օգոստոսի (20).

3. Տիգրան Գ. կամ Տիգրան կրտսեր, որդի Տիգրանայ Բ-ի հանդերձ քերբն Երատոյիւ, որ էր միանգամայն կին նորա.

4. Արտաւազդ ոմն, դարձեալ ի ձեռն Տիբերի, հրամանաւ Օգոստեայ (6).

5. Արիոբարզան, Մարաց թագաւորին որդին, ի ձեռն Գայիոսի, հրամանաւ Օգոստեայ (1 յետ Ք.ի).

6. Արտաւազդ որդի Արիոբարզանայ.

7. Տիգրան Դ. ի տոհմէ թագաւորաց Հայոց, հրամանաւ Օգոստեայ.

8. Երատոյ միւսանգամ առանձինն, յետ որոյ անտէրնչութիւն մինչև ի Վոնոն (16 յետ Ք.ի)։

Ապաքէն զարմանք են, որ քերթողահայր մեր, այնպէս համբաւեալ իբրև հայր պատմութեան մերոյ՝ Տիգրանայ անմիջական յաջորդներուն վրայ ունենալով ժամանակակից պատմիչներ զորս յիշեցինք, մանաւանդ զՅովսեպոս որ ծանօթ է նմա, ոչ ընագրէն,

այլ ինչպէս կը տեսնուի Հայերէն թարգմանութենէ մը՝ թողլով զնոսա կուտայ մեզ նոր իմն աւանդութիւն աստրական, տալով իսկ և իսկ յաջորդել Տիգրանայ կամ Արտաւազդայ՝ երևակայեալ եղբօրորդի մը Արշամ անուն, ինչպէս ըսինք այլուր՝ առ Քրիստոս ղըրկուած կեղծ նամակի մը Ուշամայն առնլով իբրև անձն, որում կուտայ յաջորդել զԱրաբացին (զՈւռՀայաստանցին) Աբգար, տողելով բիւր տռասպել մինչև յԱրտաշէս իւր Բ։

Բայց թողլով այս ամենայն նոցա, որ Խորենացւով կը պարծին՝ գանք մեր պատմութեան կարգին։



# ԳԼՈՒԽ ԺԱ.

## ՀԱՅՔ Ի ՎՈՆՈՆԷ ՄԻՆՉԵՒ ՏՐԴԱՏ Ա. (ԱՐՏԱՇԷՍ Բ. ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑՒՈՅՆ) ԿԱՄ 16—80.

### *ՊԱՐԹԵՒ—ՀՌՈՄԷԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ:*

*1. Խռովութիւնք ի Պարթեւս. Վոնոն: 2. Նոր նարստութիւն ի Պարթեւս. Արտաւան. Վոնոն ի Հայս: 3 Տիբեր. Զենոն—Արտաշէս՝ ի ձեռն Գերմանիկեայ: 4. Արշակ ի կողմանէ Պարթեւաց, Միհրդատ Վիր՝ ի Հռոմոց: 5. Վաղարշ Պարթեւ. վերջին նարստութիւն Հայոց. Պաճլաւք ի Հայս. Տրդատ—Արտաշէս: 6. Հռադամիստ—Երուանդ. պատերազմ ընդ Հռոմայեցիս. Դոմիտիոս Կորբուղոն, զօրավար Ներոնի: 7. Կեսեննիոս Պետոս փոխանակ Կորբուղոնի. ձախողել Հռոմայեցւոց: 8. Բանազնացութիւն. պատրաստութիւն զնալոյ Տրդատայ առ Ներոն: 9. Նոյն պատմութիւն ի Դիոնէ: 10. Տրդատ—Արտաշէս երթայ առ կայսր, եւ որ զկնի. Ցիշատակարանք այս դիպաց: 11. Հայք յետ մահուն Ներոնի. Արշաւանք Ալանաց. Ցովսեպոս: 12. Ներքին զործք. Վիպասանք Հայոց. Սմբատ սպարապետ Տրդատ—Արտաշիսի:*

1. Յետ սպառելոյ ցեղին Արտաքսիասայ Տիգրանաւ վերջնով և Երատոյիւ՝ Հայք մնալով առանց թագաւորի և գրեթէ յանիշխանութեան՝ ընտրեցին զփախստեայն Վոնոն ի թագաւոր (16)։ Այսպէս զի իմացուի, թէ ով էր այս Վոնոն, որոյ պատճառաւ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, երկու մեծ տէրութիւնք, Պարթեւք և Հռոմ, գրգռեցան իրարու դէմ Հայաստանի համար և արարին զերկիրն տեսարան արիւնհեղութեան՝ առնունք զպատմութիւնն սակաւ ինչ ի հեռուստ։ Ի համառօտ պատմութեան մերում զՊարթեւաց վերագոյնն յիշուեցաւ, թէ ինչպէս Հրահատ Գ, յաղթողն Անտոնիոսի, յետ մահուն սորա ակնածելով Օգոստոսէ՝ ոչ միայն դարձոյց յետս հռոմէական դրօշներն և գերիներ, զորս առած էին Պարթեւք ի պատերազմունս Կրասոսի և Անտոնեայ՝ այլև տուաւ պատանդս յորդւոցն Հրահատայ Գ-ի (20)։ Այս պատանդներէն էր Վոնոն։ Հրահատակ, որդին Հրահատայ, սպաննելով զհայր իւր

Հրահատ Դ՝ այն ինչ թագաւորեալ կ՚սպանուի, և Պարթևք կ՚ընտրեն զՈրոդ Բ. (Արշակ ԺԷ.), բայց և սա կ՚սպանուի իւր խստութեան և անագորունութեան համար։ Յայնժամ Պարթևք կը խնդրէին ի Հռոմայ Հրահատայ Դ-ի որդիներէն մին, և կը ղրկուի նոցա Վոնոն. բայց և սա իւր հռոմէասէր բարուց պատճառաւ մերժուելով՝ խոյս կու տայ ի Հայս յերեսաց Արտաւանայ Գ-ի, զոր կոչեցին Պարթևք Պահլաւ ցեղէն, ինչպէս տեսանք անդ։ Զայս պատմութիւն կ՚աւանդեն մեզ Յովսեպոս և Տակիտոս.—«Զայնաւ ժամանակաւ Հրահատ արքայ Պարթևաց սպանաւ դաւով ի Հրահատակայ յիւրմէ որդւոյն, պէս զայս օրինակ։ Հրահատ որ ունէր բազում որդիս օրինաւորս՝ հարեալ էր կնոջ ումեմն իտալացւոյ, զոր հանդերձ այլովք պարգևօք առաքեալ էր առ նա կայսր (Օգոստոս), և կինն էր արդարև գեղեցիկ։ Ի սկզբան անդ ունէր զնա Հրահատ իբրև զմին ի հարճից իւրոց, այլ սէր նորա տակաւ աճէր. և իբրև եղև նորա ի նմանէ որդի Հրահատակ՝ առնէր Հրահատ զկինն ինքեան ամուսին։ Եւ զի շահեալ տիրեալ էր կինն ի վերայ մտաց թագաւորին՝ եդ ի մտի տալ յանձնել զտէրութիւնն ի ձեռս որդւոյն, և զի չունէր ակն առնել զայն այլով իւիք, բայց տալով հեռացուցանել զորդիսն օրինաւորս Հրահատայ՝ արկ նմա առաջի և աղաչէր առաքել զնոսա պատանդս ի Հռոմ։ Թագաւորն որ չիշխէր ժխտել նմա և ոչինչ՝ առ յանձն։ Այսպէս Հրահատակ միայն մնայր առ նմա։ Որդին այն գարշելի այնպէս իմն ճեպէր թագաւորել, մինչև տաղտկացեալ ի սպասելոյ մահուան հօրն՝ տայր սպանանել զնա ըստ խորհրդոյ մօրն, ընդ որում գիտէին թէ կենայր նա ամօթալի կենօք։ Հայրասպանութեան սոսկումն հանդերձ ազգապղծութեամբն գրգռեաց ընդդէմ նորա զհասարակաց ցասումն այնպէս՝ ինչպէս հալածել նմա և մեռանել մինչչև հաստատեալ յանիբաւ իշխանութեանն։ Յայնժամ համօրէն աւագանւոյն, որ գիտէին եթէ չէր հնար կալ տէրութեանն առանց առաջնորդութեան թագաւորի, և չկամէին ունել թագաւոր բայց միայն յԱրշակունի տոհմէ, այն է յազգէ թագաւորութեանն՝ համարեալ զտոհմն Հրահատայ պղծեալ անհնարին լրբութեամբ կնոջն այնորիկ իտալացւոյ՝ ընտրեցին զՈրոդ որ էր յարենէ թագաւորաց, ամբառնալ զնա յաթոռն, և առաքեցին առ նա հրեշտակս։ Այլ իշխանս այս էր այնպէս ցասկոտ, այնպէս անագորոյն և այնպէս անհամբոյր՝ մինչև չկարացեալ ժուժել ազգին՝ գործեցին նմա դաւ, և զի Պարթևք կրեն միշտ սուսեր՝ սպանաւ նա ի խնջոյս, և կամ որպէս այլք ասեն՝ յորսի։ Այսպէս մնացեալ Պարթևաց առանց թագաւորի՝ առաքեցին ի Հռոմ խնդրել առ ի թագաւորելոյ ի վերայ նոցա յորդւոց

անտի Հրահատայ Դ-ի զմին, որ էր անդ ի պատանդի։ Տուաւ նոցա Վոնոն, զոր նախամեծար արարին քան զեղբարսն, զի համարէին զնա արժան քան զնոսա համբառնալ միաբան հաւանութեամբ երկուց պետութեանցն աւագաց յայն բարձր աստիճան պատուոյ։ Այլ զի բարբարոսքն այնոքիկ են ի բնէ անհաստատք և յանդգունք՝ գլխաւորքն ի նոցանէ ստրջացան իմն վաղվաղակի ընդ ընտրութիւն իւրեանց և ասէին, թէ չկամէին այլ ևս հնազանդել ծառայի· այսպէս կոչէին զիշխանն՝ վասն զի տուեալ էր նա պատանդ Հռոմոց։ Զի ոչ իբրաւունք ինչ պատերազմի, ասէին, այլ մին ի պայմանաց ամօթալի խաղաղութեան ետ մեզ զնա ի թագաւոր։ Յետ այսր ապստամբութեան առաքեցին մատուցանել զթագն Արտաւանայ Մարաց (Դահաց) թագաւորի, որ էր ի տոհմէ (Պահլաւ) Արշակունւոյ։ Ընկալաւ նա ուրախութեամբ և եկն զօրու ծանու։ Այլ զի աւագանին և եթ ունէր մասն ի փոփոխութեան աստ՝ Վոնոն որում կայր մնայր հաւատարիմ ժողովուրդն՝ յաղթէր Արտաւանայ ի ճակատու ուրեմն և ստիպէր զնա խոյս տալ ի լերինս անդր աշխարհին Մարաց։

**2.** Արտաւան ժողովէր յետոյ բազմութիւն մեծ, տայր երկրորդ անգամ ճակատ, ուր Վոնոն յաղթեալ պարտեալ՝ անկանէր սակաւուք ումամբք յիւրոց անտի ի Հայս։ Արտաւան յետ առնլոյ կոտորած մեծ Պարթևաց՝ եկն մինչև ի Տիզբոն և այնպէս մնաց տէր երկրին։ Իսկ Վոնոն այն ինչ եկեալ ի Հայս՝ թեկն ածէր թագաւորութեանն»։ (Յովս. Պատմ. Նախն. ԺԸ. Գ.)։ Ոչինչ ընդհատ ի սմանէ և Տակիտոս.—«Առ հիւպատոսութեամբ Սիսեննայ Ստատիղայ Տաւրոսի և Ղ. Ղիբոնի՝ աղմուկք շփոթից յուզէին զթագաւորութիւնսն արևելից և զհռոմէական նահանգս։ Նշանք տուան ի Պարթևաց, որք յետ հնազանդելոյ թագաւորի զոր նոցին իսկ խընդրեալ էր ի Հռոմայ և ընկալեալ կամաւ՝ արհամարհեցին զնա իբրև զօտար ոք, թէպէտև յարենէ Արշակունեաց։ Թագաւորն այն էր Վոնոն, զոր Աւգոստեայ առեալ էր պատանդ ի Հրահատայ։ Քանզի Հրահատ թէպէտ և վանեալ էր զզօրս և զզօրավարս մեր՝ տայր սակայն Աւգոստեայ զամենայն պատիւ մեծարանաց, և առ լաւ ևս շահելոյ զբարեկամութիւն նորա՝ առաքեալ էր առ նա զոմանս յորդւոց իւրոց ի պատանդ, ոչ սակայն առ երկիւղի Հռոմոց, որչափ առ չվստահելոյ յիւրսն։ Յետ մահուն Հրահատայ և պայազատաց նորա՝ գայր հրեշտակութիւն ի Հռոմ յանուն աւագաց թագաւորութեանն, որ տաղտկացեալք ի տեսանելոյ զհեղումն արեանց՝ խնդրէին զՎոնոն, զերիցագոյնն յորդւոց անտի Հրահատայ։ Այս գործ ողոքէր իմն զսնապարծութիւն Աւգոստեայ, որ ար-

ձակէր զիշխանն, մեծացուցեալ պարգևօք։ Բարբարոսքն ընկալան զնա ուրախութեամբ, որով սովորն են ընդունել զիւրեանց նորոգ տեարս։ Այլ յետ սակաւ միոյ ժամօթի հարեալք ընդ ընտրութիւնն՝ մեղադիր իմն լինէին անձանց, իբր այն թէ անպատուեցին զանունն Պարթևաց, այնու զի ածին յայլմէ աշխարհէ թագաւոր, զեղծեալ արուեստիւք թշնամւոյն։ Աթոռ Արշակունեացն, ասեն, իցէ ուրեմն կալեալ և տուեալ իբրև նահանգ մի ի նահանգաց Հռոմայ։ Ո՞ւր իցեն փառք այնց դիւցազանց, որոց սպանեալ էր զԿրասոս և վանեալ վկանդեալ զՄարկոսն Անտոնիոս, եթէ ծառայ մի կայսեր, խամրեալ և թառամեալ այնչափ ամաց ծառայութեամբ՝ տիրիցէ ի վերայ Պարթևաց։ Այսպէս խօսէին առ ցասման, զոր Վոնոն ևս իմն բորբոքէր հեռանալովն ի սովորութեանց նախնեաց, զի երթայր յորս դուն ուրեք, սիրէր սակաւ զերիվարս, չերևէր երբէք ի քաղաքի՝ բայց դեսպակաւ միայն, և անգոսնէր իմն զխրախութիւնս երկրին։ Ծաղր առնէին զանձնապահս նորա յոյնս և զկնիք նորա դրոշմեալ ի վերայ չնչենագոյն իրաց։ Նա և ընտելութիւն նորա և բարուցն քաղցրութիւն, առաքինութիւնք որոց անգէտ են բարբարոսքն՝ նոր ախտք էին վասն նոցա։ Օտարն կերպարանք՝ գործէր ի նմա և՛ զբարին և՛ զչար՝ միանգամայն ատելի։ Ուստի կոչեցին զԱրտաւան ոմն իշխան Արշակունի, սնեալ ի մէջ Դահաց (Սկիւթացւոց)։ Սորա պարտեալ յառաջնում ճակատու՝ գտանէր ապա զօրութիւն և ունէր զաթոռն։ Վոնոն փախստեայ անկանէր ի Հայս» (Տակ. Տրգր. Բ. 1, 3)։ Որովհետև Արտաւան Գ. որ կը խորհէր տալ զՀայաստան իւր ցեղին, կ'սպառնար Վոնոնի իբրև իւրում հակառակորդի, և Հայք չէին առանձինն ատակ պաշտպանել զնա՝ Վոնոն ապաւինեցաւ առ Հռոմայեցիս, բայց չգտնելով օգնութիւն ի նոցանէ՝ հնարիւք Կրետիկոսի Սիղանոսի կուսակալի տարուելով յԱսորիս արգելաւ։ Այսպէս Տակիտոս յետ պատմելոյ զփախուստն Վոնոնի յերեսաց Արտաւանայ և զթագաւորել նորա ի վերայ Հայոց՝ կը յաւելու. «Բայց Արտաւան սպառնայր Վոնոնի։ Եւ զի Հայք չէին ըստ բաւականին ձեռնհաս ի պաշտպանել զնա, և եթէ լինէաք միջամուխ ի կռիւ նոցա, հասանէր մեզ մխել ի պատերազմ ընդ Պարթևս՝ կուսակալն Ասորւոց Կրետիկոս Սիղանոս ձգեաց զնա յիւր նահանգ և ունէր ի պահեստի, թողեալ նմա զանուն և զնշանսն թագաւորի» (Տակ. Բ. 4)։ Նոյնպէս Յովսեպոս.—«Իսկ Վոնոն այն ինչ եկեալ ի Հայս՝ թևակոխէր ի թագաւորութիւն, վասնորոյ առաքէր հրեշտակս ի Հռոմ. այլ Տիբեր որ արհամարհեաց զնա և չկամէր զայրացուցանել զՊարթևս որ սպառնային տալ պատերազմ ընդ Հռոմայեցիս՝ չառ

յանձն լինել նմա ձեռնտու։ Այսպէս տեսեալ Վոնոնի զանձն անյոյս ընդունելոյ ինչ ի Հռոմայ, և զի հզօրագոյնն ի ցեղից Հայոց որ բնակէր առ Նպատաւ, ունէր զկողմն Արտաւանայ՝ խոյս ետ առ Սիղանոս կուսակալ Ասորւոց, որ ընկալաւ զնա, զմտաւ ածեալ, զի էր նա ժամանակաւ սնեալ ի Հռոմ» (Յովս. Նախն. պատմ. ԺԸ. 3)։

**3.** Տիբեր կայսր պատեհ առիթ համարեցաւ Արևելից խռովութիւններն՝ հեռացնելու զԴրուսոս Ներոն, որ Գերմանաց յաղթելուն համար կոչեցաւ Գերմանիկոս, զիւր որդեգիր, յանձնելով նմա կարգել զՀայս Արտաւանայ ակնկալութենէն։ Գերմանիկոս փեսայացեալ էր Օգոստոսի, առնելով կին զԹոռն նորա զԱգրիպպինա, և Տիբեր նախանձու և ատելութեամբ էր ընդ նմա, քանզի երիտասարդն քաջ և առաքինի, զոր ոսոխ իւր կը համարէր Տիբեր՝ էր սիրելի ժողովրդեան։ Ուստի յանձնեց նմա կայսրն Արևելից գործը, յուսալով թէ Գերմանիկոս սպանուէր ի պատերազմին ընդ բարբարոսս և կամ ի նենգութենէ Պիսոնի կուսակալի Ասորւոց, ընդ որում գաղտ ի բանի էր Տիբեր։ Գերմանիկոս չէր անգէտ դաւաճանութեանն նիւթելոյ ընդդէմ իւր, բայց և այնպէս փութացաւ ի Հայս, և գալով յԱրտաշատ պսակեց թագաւոր Հայոց զորդին Պոլեմոնի արքային Պոնտոսի զԶենոն, յոր միտեալ էր ազգն և ցնծութեան աղաղակներով երկիր եպագ իւր նոր թագաւորին, կոչելով զնա ազգային անուամբ Արտաշէս (18)։ Այսպէս ունինք առ Տակիտոսի. «Տիբեր ետես առանց դժկամակութեան զխռովութիւնսն Արևելից, որ տային նմա պատճառանս հանելոյ զԳերմանիկոս ի հին լեգէոնաց իւրոց և մատնել ի նոր նահանգս ի կրկին տագնապ, բախտին և նենգութեան։... Գերմանիկոս էր գիտակ ամենայնի, այլ աճապարեաց նա ի Հայս։ Ի վաղուց անտի հաւատարմութիւն ազգին այնորիկ էր ընդ յերկուանօք և՛ ի պատճառս բնաւոյ բարուց բնակչացն, և՛ վասն դրից երկրին, որ շուրջ պատեալ ունի զմեծ մասն նահանգաց մերոց, և միւսով կողմամբն մխի մինչև ի Մարս։ Կացեալ ի մէջ երկուց մեծաց պետութեանց՝ Հայք են գրեթէ միշտ ի կռուի, ընդ Հռոմայեցիս՝ առ ատելութեան, առ նախանձու՝ ընդ Պարթևս։ Յետ բարձման Վոնոնի չունէին նոքա թագաւոր, այլ խղձ ազգին էր ի կողմն Զենոնի։ Իշխանս այս, որդի Պոլեմոնի արքայի Պոնտացւոց, նմանեալ անդստին ի մանկութենէ սովորութեանց և հանդամանաց կենաց Հայոց, որսոց նոցա, խրախութեանց և ամենայն ճաշակաց բարբարոսացն՝ ածեալ էր զիւրև զաւագանին և զժողովուրդն միաբանամայն։ Գերմանիկոս երթայ յԱրտաշատ քաղաք, և հաւանու-

թեամբ մեծամեծացն, ի ձայն ցնծութեան բազմութեանն՝ անձ զգլխով նորա զարքունական ապարօշն։ Երկիր եպագ ժողովուրդն տեառն իւրում նորոյ և կոչեաց նմա անուն Արտաշէս, ըստ անուան քաղաքին»․ (Տակ․ Բ․ 8․)։ Երբ Հայոց թագաւոր արուեստ լուր լուրն հասաւ ի Հռոմ՝ ծերակոյտն որոշեց որ Գերմանիկոս (որ Գերմանաց յաղթած էր) հանդերձ եղբարբն Դրուսոսիւ մտնէր յաղթանակաւ ի Հռոմ, և առ մեհենիւն Արեսի կանգնեցան կամարք, և պատկերք նոցա առ նոսին․—«Իբրև ազգ լինէր յայնժամ, թէ Արտաշէս եղաւ յաթոռ թագաւորութեանն Հայոց՝ հրաման վճռոյ ծերակուտին սահմանէր նուէրս Գերմանիկեայ և Դրուսայ, և երկուստեք մեհենին վրէժխնդիրն Արեայ կանգնեցան կամարք յաղթութեան, ուր եդան անդրի պատկերք երկոցունցն (Տակ․ Բ․ 64)։ Բայց Գերմանիկոս մեռաւ յԱսորիս, թունաւորեալ ի Պիսոնէ (19)։ Զայս կարծիս ունի Սուետոն․—«Գերմանիկոս, հայր Կայիոսի Կեսարու Կաղիգուղայ և որդի Դրուսոսի (եղբօր Տիբերի) և Անտոնեայ, կրտսերագոյն դստերն Անտոնիոսի՝ առաւ յորդեգիրս յիւրմէ հօրեղբօրէն ի Տիբերեայ։ Վարեաց զպաշտօն գանձապետութեան զամս հինգ առաջ քան զտիս՝ յորում թոյլ տուեալ է յօրինաց, և զհիւպատոսութեանն՝ իսկ և իսկ զկնի։ Առաքեալ ի զօրսն ի Գերմանիա՝ կալաւ մեծաւ հաստատութեամբ և բազում խնամով զլեգէոնսն, որոց յառնուլ զգոյժ մահուանն Աւգոստեայ՝ հեստեալ հակառակէին ընդունել կայսր զՏիբեր և նմին Գերմանիկեայ կամէին տալ զտէրութիւնն։ Յաղթեալ նորա թշնամւոյն՝ կատարէր զձաղանսն։ Ապա անուանեալ բդեաշխ երկրորդ անգամ, մինչև առեալ յանձին զպատիւն՝ գոգ իբրև վտարանդի առաքէր խաղաղել զարևելս։ Յետ տալոյ թագաւոր Հայոց և առնելոյ նահանգ զԿապադովկիա՝ մեռանէր յԱնտիոք ամաց իբրև երեսուն և չորից՝ ծիւրական տխտիւ ջերեալ, թունով որպէս կարծի» (Սուետ․ ի Կաղիգ․ Ա․)։ Զթագաւորելն Զենոնի ի վերայ Հայոց կը թուի ակնարկել «դահեկանն Տիբերի յամէն 19, յորոյ ի միում կողմանն կայ պատկեր Յաղթութեան, որ յեցեալ ի գունդ մի կապէ պսակ դափնւոյ» (Գաթըրճ․ Տիեզ․ պտմ․ Բ․ 100)։

Տեսնենք այժմ թէ ինչ եղաւ Վոնոն։ Մինչ Հայք զբաղեալ էին իւրեանց նոր թագաւորաւն, որ այնպէս շքով տուաւ նոցա Գերմանիկոսէ՝ Վոնոնի որ էր արգելեալ յԱսորիս՝ հատաւ յոյս թագաւորելոյ Հայոց, մանաւանդ զի Արտաւան կ՚ստիպէր զՀռոմայեցիս հեռացունել զնա յԱսորւոց երկրէն, ուր կը ջանար նա իւր արբանեկաց ձեռօք գրգռել յապստամբութիւն Պարթևաց աւագանին։ Գերմանիկոս փոխեց զՎոնոն ի Կիլիկիա, ի Պոմպէոպոլիս

քաղաք մօտ ի ծովն, ոչ միայն ի շնորհս Արտաւանայ այլև հակառակ Պիսոնի իւրոյ թշնամւոյն, որ կամէր պահել առ իւր զՎոնոն, որմէ յաճախ պարգև կ'ընդունէր կին Պիսոնի։ Բայց Վոնոն կաշառելով իւր պահապաններն՝ զերծաւ, և կը խորհէր ապաւինել ի Սկիւթացիս օգնութեան համար, սակայն յառաջ քան զելանել իւր Կիլիկիոյ սահմանէն դուրս՝ սպանուեցաւ (19)։ «Մինչ այս մինչ այն՝ գային հասանէին հրեշտակք յԱրտաւանայ արքայէ Պարթևաց (առ Գերմանիկոս, 19)։ Յուշ առնէին նմա զուխտ դաշանցն և զբարեկամութիւնս, որ կապէր զերկոսին պետութիւնսն, յաւելեալ թէ Արտաւան ցանկայր նորոգել զայն անձամբ և թէ ի պատիւ Գերմանիկեայ գալոց էր նա մինչև ցափն Եփրատայ. խնդրէր սակայն առ ժամն հեռացուցանել զՎոնոն յերկրէն Ասորւոց, ուստի մօտաւորութեան աղագաւ արբանեակք նորա գրգռէին յապըստամբութիւն զմեծամեծս թագաւորութեանն։.. Վոնոն ածաւ ի Պոմպէոպոլիս, ծովեզերեայ քաղաք Կիլիկեայ. այս եղև ի հաճել զմիտս թագաւորին, միանգամայն ի հեճուկս Պիսոնի, որում սիրելի զանձն գործեալ էր Վոնոն խնամովքն և պարգևօք, որովք առատանայր առ կին նորա Պղակինա։.. Զայնու ժամանակաւ Վոնոն որ կայրն վտարանդի ի Կիլիկիա, որպէս պատմեցիս՝ կաշառեալ զպահապանսն հնարէր անկանել ի Հայս, անտի ապա յԱղուանս և ի Հենիոքս, հուսկ ուրեմն առ արքայն Սկիւթացւոց յիւր ազգական։ Պատճառանօք որսոյ հեռանայր ի ծովէն և լինէր միջամուխ յանտառս, ապա արշաւեալ ամենայն զօրութեամբ երիվարին՝ հասանէր ի Պիւրամոս գետ։ Իբրև զգաստ լինէր բնակչացն փախուստ նորա՝ հատանէին զկամուրջսն, և գետն չէ անցանելի։ Լեալ ձերբակալ անդ առ եզերբն ի Վիբեայ Փրոնտոնէ, հրամանատարէ հեծելազօրուն՝ Վոնոն արկաւ ի շղթայս։ Յետ սակաւ միոյ ումն ի ձիաւորաց անտի Ռեմմիոս անուն, որ պահէր զարքայ յառաջ քան զփախուստն՝ անցուցանէր, որպէս թէ ցասուցեալ իմն, զսուսեր իւր ընդ անձն նորա։ Սակայն յայտնի եղև, թէ էր նա կամակից փախստեան նորա, և սպան զնա զի մի ի վեր ելցէ բանն» (Տակ. Բ. 58)։

**4.** Այս միջոցին Արտաշէս (Զենոն) զոր կացոյց Գերմանիկոս թագաւոր Հայոց՝ մեռած էր, և Արտաւան Գ. արքայ Պարթևաց, որ ի վաղուց կը խորհէր կապել զՀայս ընդ իւրում ցեղին, տեսնելով զՏիբեր ծերացեալ՝ համարձակեցաւ կացուցանել զիւր երէց որդին զԱրշակ թագաւոր Հայոց (34). բայց Տիբեր անճապարեց զրկել այլ թագաւոր փոխանակ Արտաւանայ, զորմէ չէին գոհ Պարթևք, և Ասորւոց կուսակալին ձեռօք թագաւորեցուցանել Հայոց՝

Վրաց թագաւորին Փարսմանայ եղբայրն Միհրդատ (35)։ Այսպէս ունի Դիոն (ԺԸ. 26). «Զայնու ժամանակաւ Արտաւան Պարթեւ, յետ մահուն Արտաշիսի (արքայի Հայոց—Զենոն), տայր զՀայս որդւոյ իւրում Արշակայ, և զի ոչ պատուհասեաց զնա Տիբեր՝ յիներ ձեռներէց ի Կապադովկիա, և ընդ Պարթևս իսկ գնայր ամբարտաւանութեամբ, մինչև ոմանց (յաւագաց անտի) փախուցեալ առաքել հրեշտակս առ Տիբեր՝ խնդրել ի նմանէ թագաւոր ի պատանդաց անտի։ Տիբեր առաքէր նախ զՀրահատ որդի Հրահատայ Դ., յետոյ իբրև մեռանէր սա ի ճանապարհին՝ զՏրդատ ոմն որ էր նոյնպէս յարքունի տոհմէ։ Առ դիւրացուցանելոյ նմա առնուլ զթագաւորութիւն իւր՝ գրէր առ Միհրդատ Վիր յարձակել ի Հայս, որպէս զի սախպեալ Արտաւանայ օգնել որդւոյն՝ ելցէ յիւրմէ երկրէն (ի Կապադովկիոյ). և եղև իսկ այնպէս։ Բայց Տրդատ ոչ ժամանեաց թագաւորել ընդ երկար, քանզի Արտաւանայ գտեալ օգնութիւն ի Սկիւթացւոց անտի՝ մարթացաւ վանել զնա։ Այսպիսի էին իրք Պարթևաց։ Իսկ ի Հայս Միհրդատ, որդի, որպէս կարծի Միհրդատայ Վրի և եղբայր Փարսմանայ, որ յետ Նորա տիրեաց Վրաց՝ կալաւ զերկիրն»։ Ցայտնագոյն ևս Տակիտոս մերձաւոր ժամանակաւ, որ ունի այսպէս. «Արտաւան, հաւատարիմ առ Հռոմայեցիս և արդար առ իւրսն, ցորչափ երկնչէր ի Գերմանիկեայ՝ ոչինչ յապաղեաց յետոյ խրոխտալ ընդ մերում պետութեան և բռնանալ ի վերայ իւրոցն։ Պատերազմունք տուեալք յաջողութեամբ ընդ ազգս արուարձականս՝ փքացուցին զնա ամբարտաւանութեամբ. արհամարհէր նա զծերութիւնն Տիբերեայ իբրև անզէն և տկար, և ակն եդեալ էր ի Հայս։ Իբրև կորոյս երկիրս այս զթագաւոր իւր զԱրտաշէս՝ Արտաւան կացոյց անդ թագաւոր զերէցն յորդւոց անտի իւրոց որ Արշակն կոչէր, և յաւելեալ ի յափշտակութիւն անդր թշնամանս՝ առաքէր խնդրել զգանձսն թողեալս ի Վոնոնէ ի Կիլիկիա և յԱսորիս։ Նոյնժամայն խօսէր և զհին սահմանացն Պարսից և Մակեդոնացւոց և սպառնայր մեծաժպրհութեամբ՝ առնուլ յետս զոր ինչ ունէին Կիւրոս և Աղեքսանդրոս։ Այլ Տիբեր տայր ոսոխ Արտաւանայ զՏրդատ ոմն իշխան ի նմին արենէ, և զՄիհրդատ ոմն Վիր ընտրէ ունել զՀայս, հաշտեցուցեալ զնա ընդ Փարսմանայ եղբօր նորա որ թագաւորէր ի Վիրս, ժառանգութիւն ազգատոհմին, և առնէր յանձն Վիտելեայ (կուսակալի Ասորւոց) հսկել խռովութեանց որ մօտալուտ ի վերայ կային յարևելս»։

Այսպէս Հռոմ զխորհուրդն Արտաւանայ միացուցանել զարևելս ընդ իշխանութեամբ Պահլաւ ցեղին՝ կը հանէ ի դերև առ ժամն,

զՏրդատ յարուցանելով հակառակ Արտաւանայ ի Պարթեւս, զՀայս տալով վեր իշխանի։

Միհրդատ զոր Տիբեր կացոյց ի վերայ Հայոց փոխանակ Արշակայ՝ կու տայ դաւով սպանանել զԱրշակ (35) և ինքն վրացի զօրօք գալով կ՚առնու զԱրտաշատ։ Արտաւան զայրացեալ կը յանձնէ որդւոյ իւրում Որոդայ՝ խնդրել զվրէժ մահուն Արշակայ, վանել զՎիրս և ունել միւսանգամ զՀայաստան։ Կը ծագի ի մէջ Պարթեւաց և Վրաց այս պատճառաւ պատերազմ մեծ, զոր երկար կը նկարագրէ Տակիտոս, բայց ի պարտութիւն կը մատնին Պարթեւք, և Արտաւան կը հրաժարի առ ժամն ի Հայաստանէ։ Ահա բանք Տակիտոսի.

«Միհրդատ (զոր կացոյցն Տիբեր ի վերայ Հայոց) մատուցեալ զառաջինն առ Փարսման՝ հաւանեցուցանէր զնա ձեռն տալ նմա նենգաւ և բռնութեամբ։ Գտանէին սոքա արս անօրէնս, որ բազում ոսկւով հրապուրեցին զծառայս Արշակայ լինել տիրասպան, և ինքեանք բազմաձեռն գնդաւ արշաւէին ի Հայս և առնուին զԱրտաշատ քաղաք։ Առ այս գոյժ՝ Արտաւան յանձն առնէր զվրէժ քինուն որդւոյ իւրում Որոդայ, տուեալ նմա զօրս՝ առաքէր գնել վարձկանս արտաքոյ։ Փարսման ևս մտանէ ի դաշն ընդ Աղուանս և կոչէ զՍարմատս, որոց իշխանք առեալ վարձս երկուստեք՝ վաճառէին զանձինս, ըստ սովորութեան ազգին այնորիկ՝ երկուց հակառակորդաց։ Բայց Վիրք, տեարք երկրին, բանային զդրունս Կասպից և ողողէին զՀայս Սարմատօքն իւրեանց։ Իսկ որ առ Պարթեւսն գային՝ արգելան դիւրաւ, զի թշնամին ունէր զամենայն անցս. մին միայն, որ մնայր ի մէջ ծովուն և վերջին լերանց Աղուանից՝ էր անկոխ անգնաց սակս ամառայնոյն, զի յայնժամ հողմք տարեւորք ողողեն զափունսն զայնոսիկ։ Ի ձմերան և եթ, յորժամ հողմն հարաւոյ նահանջիցէ զջուրսն և տայցէ ծովուն մտանել յիւր սահման՝ ի վեր երեւի աւազն։ Որոդ մնայր այսպէս անօգնական։ Իսկ Փարսմանայ յեցեալ յիւր օգնականսն՝ յառաջ մատուցանէ զճակատն, և տեսեալ զի խուսէր Որոդ՝ ձայն տայ, նախատինս կարդայ զօրաց նորա, կոտորէ զհամբարապանսն. բազում անգամ պատէ զնա յառաջապահօքն և ունի իբրեւ ի պաշարման։ Հուսկ ուրեմն Պարթեւք, որ չեն սովոր ժոյժ ունել թշնամանաց՝ խառնին զթագաւորաւն և խնդրեն պատերազմ։ Բովանդակ զօրութիւն նոցա էր յայրուձին։ Իսկ Փարսման ունէր և հետեւակս. քանզի Վիրք և Աղուանք որ լեռնաբնակք են՝ լաւ ևս տոկան խստամբերութեան և դժնդակ աշխատութեան։ Ասի թէ են նոքա ծննդեամբ ի Թեսաղացւոց անտի, որ զհետ չոքան Յասոնեայ։ Երկոքին բանակքն ճա-

կոտէին։ Պարթեւն գովէր առ զօրս իւր զաղնուականութիւն Անրշականեաց. զի՞նչ կարող ՝իցեն, ասէ, ընդդէմ ազգի որ տէրն է արեւելից՝ Վիրն առանց փառաւորութեան և վարձկանք նորա անարգք։ Իսկ Փարսման յիշեցուցանէր իւրոցն, թէ չեն երբէք մտեալ ընդ լծով Պարթեւաց, թէ որչափ մեծ իցէ գործն յոր ձեռն արկեալ ուրուք իցէ՝ այնչափ փառս յաճախիցէ յաղթողին, իսկ ամօթ և տագնապ՝ վատին որ փախիցէ։ Եւ ցուցանէր նոցա, յիւրմէ կուսէ՝ գունդս գունդս սուսերաւորաց, ի կողմանէ թշնամւոյն՝ Մարս վառեալս ոսկւով և արծաթով, աստ՝ զօրականք, անդ՝ աւար ի կողոպուտ։ Ձէր սակայն բարբառ և եթ զօրավարին որ քաջալերէր զՍարմատս։ Վառէին նոքա այր զընկեր՝ ոչ սկիզբն առնել կռուոյն նետաձիգ լինելով ի թշնամիս անդր, այլ յարձակել և անկանել յանկարծ ի վերայ նոցա։ Մարտն մատուցանէր տեսիլս ազգի ազգիս։ Պարթեւն, վարժ ի մտանել զհետ և յընկրկել յետս՝ ելանէ ի ճակատէն, ի բացուստ կշռէ զհարուածն։ Սարմատք, թողեալ զաղեղունս իւրեանց որ ոչ կարի հեռի ձգեն զնետն՝ ընթանան նիզակ յառաջ և սուսեր ի ձեռն։ Մերթ, որպէս ի կռուի հեծելոց՝ էր տեսանել յարձակումն և այսրէն դարձ, մերթ խառնուրդ իմն, ուր զէնք ընդ միմեանս բախիցեն և այր զայր մղիցէ։ Հուսկ ուրեմն Աղուանք և Վիրք բուռն հարեալք զախոյանիցն՝ զգետնեն զնոսա և արկանեն ի կրկին տագնապ—բազուկ հեծելոյն ի վերուստ իջուցանէ հարուածս և հետեւակն ի ներքուստ ի մօտոյ։ Փարսման և Որոդ ընթանային այսր անդր, օգնել կամ տալ քաջալերս։ Դիւրին էր ճանաչել զնոսա ի նշանաց անտի պատուոյ նոցա. աղաղակ նոցա և նիզակքն և նժոյգք հանդիպին միմեանց։ Փարսման որ էր ուժգնագոյն՝ հար ճեղքեաց զսաղաւարտն Որոդայ, այլ տարեալ յերիվարէն՝ չկարաց կրկնել, և իսկոյն պատէին զՈրոդաւ քաջագոյնք յանձնապահաց նորա։ Սակայն շշունջն որ տարածեցաւ թէ մեռաւ Որոդ՝ զարհուրեցոյց զՊարթեւս որ ետուն զյաղթութիւնն։

Արտաւան ի վրէժ այսր պարտութեան՝ խաղայր համօրէն զօրութեամբ Արեաց։ Վիրք որ քաջ տեղեակ էին վայրացն՝ յաղթէին զայս նուագ եւս. այլ Արտաւան չկասէր թերեւս ի գործոյն, եթէ Վիտեղեայ գումարեալ զլեգէոնսն ի մի վայր և հանեալ համբաւ թէ ունիցի արշաւել ի Միջագետս՝ չէր արկեալ նմա ահ ի զինուց Հռոմոց»։

Այսպէս Միհրդատ Վիր կը հաստատուի առ ժամն ի թագաւորութեան Հայոց. բայց մեք մատիցուք ի կարգ պատմութեանն։ Դժբախտութեամբ Է, Ը, Թ և Ժ. դպրութիւնք Տակիտոսի կորուսեալ են, յորս կար անտարակոյս բազում ինչ ւզ զՊարթեւաց մի-

այն, այլև զՀայոց, մանաւանդ զՄիհրդատայ Վրէ, զորոյ պատմութիւնն պիտի տեսնենք այժմ։ Ը. գլխէն ԺԱ. դպրութեան Տակիտոսի կը տեսնուի սակայն, թէ յաջորդն Տիբերի Կաղիգուղա, չենք գիտեր ինչ պատճառաւ, այլ հաւանականապէս ի շնորհուկս Արտաւանայ՝ հանեց զՄիհրդատ թագաւորութենէն (37), և Պարթևք, ինչպէս կ'երևի՝ կալան (37—41) միւսանգամ զՀայս, ոչ իբրև թագաւորութիւն, այլ իբրև նահանգ ընդ կուսակալաւ։ Բայց՝ յաջորդն Կաղիգուղայ Կղաւդիոս կայսր (41—53) արձակեց զՄիհրդատ ի ժամանակին, զի Արտաւան սպանուած էր (44) և կը թագաւորէին որդիք նորա Վարդան (Արշակ Ի.) և Գոտարզ (Արշակ ԻԱ.), իրարմէ յափշտակելով զթագաւորութիւնն։

Մինչ Պարթևք զբաղեալ էին այս խռովութիւններով (44—50)՝ Միհրդատ Վիր, արձակեալն ի Կղաւդեայ՝ կուգայ ի Հայս հռոմայեցի զօրօք, ունենալով օգնական զեղբայր իւր զՓարսման։ Մինչ հռոմայեցի զօրն, վարժ ի պաշարումն, կ'առնուր մի ըստ միոջէ բերդերը՝ Վիրք կը տիրէին դաշտակողմանց։ Հայք չդրին դէմ, քանզի մարզպան աշխարհին ի կողմանէ Պարթևաց՝ չկարաց զդէմ ունել։ Թէպէտ Կոտիս թագաւոր Փոքուն Հայոց փորձեց արգելուլ զՎիրս, բայց հրամանաւ Կղաւդեայ ստիպուեցաւ կենալ յետ. Նոյնպէս Վարդան, որ պատրաստուեցաւ առնուլ միւսանգամ զՀայաստան, բայց արգելուեցաւ ի սպառնալեաց Հռոմայեցւոց։ Այսպէս զօրացաւ դարձեալ Հռոմայեցւոց կողմը, և Միհրդատ կալաւ անարգել զՀայս։

Զայսմ ամենայնէ կը խօսի Տակիտոս երկայնագոյնս.—

«Զայնու ժամանակաւ Միհրդատ արքայ Հայոց որ ածաւ առաջի Կաղիգուղայ, որպէս պատմեցաք՝ դարձաւ ի թագաւորութիւն իւր խրատուն Կղաւդեայ և վստահացեալ յօգնականութիւն Փարսմանայ։ Թագաւորս այս Վրաց և եղբայր Միհրդատայ ազդ առնէր (ի Հռոմայեցիս անդր), եթէ Պարթևք պառակտեալք յընտրութիւն թագաւորի՝ չունէին ամենևին փոյթ զայլոց իրաց։

Միհրդատայ Վրի իմացեալ զայս ամենայն՝ գտեալ պարապ յարձակէր ի Հայս, զորոյ զբարձունս և զբերդս նուաճէր հռոմէական զօրն, մինչ վրացի գունդք աւերէին քանդէին զդաշտականս. քանզի Հայք չեղեն դիմակալ, յետ ճակատ տուեալ ի պարտութիւն մատնելոյ մարզպանին իւրեանց Դեմոնակայ։ Զյաջողութիւնն Միհրդատայ յամեցոյց սակաւիկ մի Կոտիս արքայ Փոքուն Հայոց, առ որ եկեալ յարեալ էին բազումք ի մեծամեծաց (Հայոց)։ Սակայն հրովարտակ մի ի Կղաւդեայ բաւական եղև ունել զնա յետս, և

երկիրն նուաճեցաւ ընդ Միհրդատաւ, որ եցոյց խստութիւն՝ զոր չէր արժան ի սկզբան թագաւորութեանն։

Միհրդատ, ինչպէս տեսանք՝ զօրացաւ միւսանգամ ի Հայս, մինչ յետ մահուն Արտաւանայ կը թագաւորէին որդիք կամ եղբարք նորա Վարդան և Գոտարզ (Արշակ Ի. և Արշակ ԻԱ. 44—50)։ Յետ մահուն Գոտարզայ՝ ըստ Տակիտոսի «Վոնոն Բ. (Արշակ ԻԲ.) որ էր կուսակալ Մարաց յազգականութենէ նորա՝ կոչեցաւ յաթոռն։ Ոչ յաջողութեամբ ինչ և ոչ չաջողութեամբ լինէր հռչակաւոր անուն նորոյ թագաւորին։ Ժամանակ թագաւորութեան նորա եղև կարճ (կը թուի մեռեալ ի նմին ամի 50) և առանց փառաց, և թագն Պարթևաց տուաւ յետ նորա որդւոյ նորա Վաղարշու»։ Յովսեպոս չգիտեր զՎոնոն, այլ Գոտարզայ, զոր կը գնէ սպանուած դաւով՝ կը պատմէ յաջորդեալ զՎաղարշ, զորմէ ասէ թէ էր եղբայր Գոտարզայ.—«Պարթևք սպանին զՎարդան և եդին փոխանակ նորա զեղբայր նորա զԳոտարզ, որ նոյնպէս յետ սակաւուց սպանաւ դաւով, և Վաղարշ (Արշակ ԻԳ.) եղբայր Գոտարզայ պայազատէ զնա» (Յովս. Նախն. պատմ. Ի. Բ.)։ Այսպէս յետ Արտաւանայ՝ երևելին ի թագաւորս Պարթևաց Վաղարշ, Պահլաւ ցեղէ, կ'առնու թագաւորութիւնը։

**5.** Վաղարշու երկայն թագաւորութիւնը (50—90) եղաւ նշանաւոր Հայաստանի համար, որոյ գահուն վրայ նստաւ նոր թագաւոր Պահլաւ ցեղէ, որ տևեց, ինչպէս արդէն յիշուեցաւ՝ գրեթէ անընդհատ մինչև ի վախճան Հայ Արշակունի հարստութեան։

Տակիտոս կու տայ մեզ մեր պատմութեան այս կարևոր մասն ընդարձակ և այնպէս մանր, քան զոր աւելին չէր կարող տալ և ոչ մի ազգային պատմագիր, եթէ ունենայինք։ Նենգութիւն Վրաց, մեքենաւորութիւն Հռոմայեցւոց և փառասիրութիւն Վաղարշու՝ բերին երկար պատերազմ, որ տուաւ վերջ Հայաստանի իբր 35-ամեայ անիշխանութեան, տալով մեզ մեր հարստութեանց (թագաւորական տոհմերուն) պատուականագոյնը, որոյ ժամանակ եղան՝ ինչ որ Հայք ունին արժանաւոր ի պատմութեան։ Ինչպէս արդէն յիշուեցաւ՝ մինչ Միհրդատ Վիր, եղբայր Փարսմանայ թագաւորին Վրաց, կը թագաւորէր ի Հայս հռոմէական աջակցութեամբ՝ Վաղարշ Ա. յիշելով իւր նախնւոյն Արտաւանայ Գ-ի խորհուրդը,—Հայաստան կապել իւր ցեղին հետ (տալով զորդին իւր զԱրշակ՝ թագաւոր Հայոց և այսու բերելով այն ձախող պատերազմը, որ յիշուեցաւ ի վերոյ),—յետ տալոյ Մարաց (Ատրպատականի) թագաւորութիւնը իւր երէց եղբօր Բակրոյ՝ Հայոցը կը սահմանէ իւր կրտսեր եղբօր Տրդատայ, որ և Տիրիթ (51)։ Մինչ այս ուրուագիծը

կը պատրաստուէր ի Պարթեւս՝ ուրիշ մեքենայ սկսաւ լարուիլ ի Վիրս։ Ձձեռնարկելն Վաղարշու ի կապել զՀայս իւր ցեղին հետ մշտնջենապէս՝ կու տայ մեզ Նախ Յովսեպոս.—«Պարթեւք սպանեալ զՎարդան՝ եդին փոխանակ նորա զԳոտարզ զեղբայր նորա, որ նոյնպէս յետ սակաւուց սպանաւ դաւով, և պայազատէր զնա Վաղարշ եղբայր Գոտարզայ։ Թագաւորս այս, որոյ էին եղբարք երկու ի նմին հօրէ՝ տայր միումն, Բակրոյ, որ իմաստնագոյնն էր՝ զթագաւորութիւնն Մարաց, և Տրդատայ, որ կրտսերագոյնն էր՝ զթագաւորութիւնն Հայոց» (Յովս. Նախն. պատմ. Ի. 2)։

Թէպէտ ծանր է մեզ, որ այլ ազգ ուսած ենք մեր պատմութիւնը՝ կը ստիպուինք սակայն ստուգագոյն պատմութեան առջև զարմանալ, թէ ինչ տկարութեան, մանաւանդ թէ անկածութեան հասած էին յայնժամ Հայք, մինչև թողուլ այնպիսի պատուական թագաւորութիւն մի նշաւակ բախտախնդիրներու փառասիրութեան։ Ձիարդ և իցէ՝ տեսնենք պատմութիւնը։

Ե. Փարսման արքայ Վրաց տեսնելով զորդին իւր Հռադամիստ անուն, հզօր և ժիր, ցանկացող թագաւորութեանն Վրաց՝ առ առնել անկասկած զիշխանութիւն իւր, թերևս և զկեանս, փառասէր որդւոյն մեքենաւորութեանց դէմ՝ կը դրդէ զնա ընդդէմ հօրեղբօր իւրոյ Միհրդատայ, որ կը թագաւորէր ի Հայս։ Հռադամիստ գալով առ Միհրդատ իբր բարեկամ, մանաւանդ թէ ազգական՝ կը շահի յիւր կողմն Հայոց նախարարներէն ոմանս, և ապա վրացի զօրօք կու գայ յանկարծ Միհրդատայ վրայ, որ շփոթելով այս անակնկալ յարձակմանէն՝ կ'ամրանայ Գառնոյ բերդը, որ էր ի ձեռս հռոմայեցի պահանորդաց ընդ հրամանատարութեամբ Պողիոնի և Կասպերիոսի հարիւրապետաց։ Հռադամիստ կը կաշառէ զՊողիոն, և Միհրդատ մատնուելով ի ձեռս Հռադամիստայ՝ կ'սպանուի մեղմեխանօք կանամբք և որդւովք հանդերձ։ Կասպերիոս որ հակառակ էր այս մատնութեան՝ շատ ջանաց, բայց չկարաց զառաջն առնուլ մատնութեանն։ Ոչ Կասպերիոս միայն, այլև ոչ Կուադրատոս կուսակալ Ասորւոց կարացին հեռացնել զՎիրս Հայաստանէ, քանզի Կապադովկիոյ կուսակալն Պեղիգնոս կեցաւ պաշտպան, և թագաւորեց Հռադամիստ, հայ անուամբ Երուանդ (45—53)։

Այս միջոցին Տիրիթ կամ Տրդատ (Արտաշէս Բ. Խորենացւոյն) կը մտնէ ի Հայս պարթև զօրօք (51), բայց ձմերան խստութեան պատճառաւ կ'արգելուի Հայաստանի նուաճումը, և Հռադամիստ որ իւր վրացիներով խոյս տուած էր՝ կը դառնայ. բայց առաւել քան զառաջինն բռնանալով՝ ազատելու համար դառնացեալ ժողովրդեան ցասմանէն՝ կը փախչի (53), ի ճանապարհին վիրաւորելով

զկին իւր Զենոբիա՝ զդուստր Միհրդատայ, որպէս զի չիյնար նա ի ձեռս թշնամւոյն, թէպէտ զարմանալի իմն դիպուածով ազատելով ի մահուանէ՝ կը տարուի տիկինն առ Տրդատ, և կը պահուի պատուով մինչև ի մահ իւր։ Տրդատ կը գրաւէ զՀայս (53)։ Բայց երբ լուր Հռադամիստայ մերժուելուն և Պարթևաց գրաւելուն զՀայաստան կը հասնի ի Հռոմ՝ որովհետև այս փոփոխութիւն չեղաւ հաճութեամբ Հռոմայեցւոց՝ Ներոն կայսեր (54—68) հրամանաւ կու գայ յարևելս Դոմիտիոս Կորբուղոն, այր անուանի, հրատարակել պատերազմ ընդ Պարթևս, եթէ չառնուն նոքա յանձն թողուլ զՀայս, և Վաղարշէ կը խնդրուի տալ պատանդս Հռոմայեցւոց ըստ սովորութեան իւրոց նախնեաց։ Պատանդք կը տրուին (55), և Կորբուղոն և Կուադրատոս բդեաշխք այս գործին համար կը պսակուին դափնեով հրամանաւ Ներոնի։ Վաղարշ յանձն չառնուր սակայն հանել զՏրդատ, և կը հրատարակուի պատերազմն։ Զմերան սաստկութեան պատճառաւ կ'երկարի պատերազմն մինչև գարուն։ Տրդատ խորագիտութեամբ կը յոգնեցունէ զՀռոմայեցիս առանց յայտնապէս ճակատ տալոյ. բայց դրացի ազգեր, դաշնակիցք Հռոմայեցւոց՝ ուստեք ուստեք յարձակելով կ'աւերեն զերկիրն (55—57)։ Կորբուղոն խրատ կու տայ Տրդատայ՝ խնդրել թագաւորութիւնն ի Հռոմայեցւոց իբրև հպատակ կամ հարկատու, և հաստատուիլ յիշխանութեան։ Որովհետև Տրդատ կը գանգատէր երթալ առ Կորբուղոն այս նպատակաւ առ ահի կամ առ կասկածանաց՝ Հռոմայեցիք սկսան պաշարել բերդերը։ Կէսք առնուեցան, այլք եղան անձնատուր։ Ցայնժամ Կորբուղոն անկասկած և առանց ընդդիմութեան անցնելով զԵփրատ՝ կու գայ ի վերայ Արտաշատու։ Կ'առնուի քաղաքն և լինի այրեացուեր (58)։ Այս բաներուն համար Հռոմ կը մատուցուին պաղատանք, և Ներոն կու տայ հարկանել դահեկան ի յիշատակ եղելոցն։ Կորբուղոն կը դիմէ ի վերայ Տիգրանակերտի, անցնելով ընդ Տարօն։ Տիգրանակերտցիք կը բանան դուռները, միջնաբերդն միայն կ'առնուի յարձակմամբ։ Թէպէտ Տրդատ որ խոյս տուած էր ի Մարս, փորձեց մի անգամ ևս վանել զՀռոմայեցիս՝ բայց չկարացեալ մեկնեցաւ յուսահատ։ Երկիրը մնաց յիշխանութեան այս վերջնոց, որ դրին Հայոց վրայ թագաւոր Տիգրան զոմն, թոռն Արքեղայոսի արքային Կապադովկեայ, զոր Հայք, թէպէտ ոչ ամենեքին, ձանձրացեալ այնչափ աւերումներէ, տեսնելով ևս զակարութիւնն Պարթևաց՝ հաճեցան ընդունել (59)։ Ի յիշատակ այս յաղթութեան ևս կան դահեկանք Ներոնի։ Դահեկան մի յամէն 58, արծաթի, ի միում կողման գիր՝ Հայաստան առեալ կամ նուաճեալ, և պատկեր Յաղթութեան, պսակ

յաջոյ ձեռքն և արմաւենի. և դարձեալ այլ դահեկան, ուր Յաղ-
թութիւնը կը գրէ գէր վահանի վրայ։ Դարձեալ ուրիշ դահեկանք
ոսկէք և արծաթիք 61, 62, 63 ամին. ի միում կողման գլուխ
Ներոնի, ի միւսումն պսակ ի կաղնւոյ կամ Դեմետր չաստուած բե-
րոց երկրի, յաջումն հասկ և ի ձախումն ջահ. և դարձեալ Ջին-
ուար՝ սուր ի ձեռքն աջոյ և Նիզակ ի ձախումն, և կը կոխէ աջոյ
ոտամբ մարդոյ գլուխ և կամ սաղաւարտ մի (Գաթըրճ. Պատ. Տիեզ.
Հա. Բ. էջ 114, 116)։

Բայց Վաղարշ, որ ցայնժամ մտած չէր ի կռիւ՝ խորհրդով
աւագանւոյն Պարթևաց տուաւ զօրս ի ձեռս Տրդատայ, և ինքն
ևս կը պատրաստուէր խաղալ բոլոր զօրութեամբ Պարթևաց։ Կոր-
բուղոն որ կարգեալ էր կուսակալ Ասորւոց, ղրկելով զօր յօգնու-
թիւն նոր թագաւորին Տիգրանայ՝ ինք կը մնար զափամբ Եփրա-
տայ ընդդէմ Վաղարշու։ Տրդատ կը պաշարէ զՏիգրանակերտ, բայց
կ'ընկրկի յետս։ Կորբուղոն կ'սպառնայ Վաղարշու, որ կը ղրկէ
պատգամաւորներ ի Հռոմ խնդրել զՀայաստան, և կը դառնայ
յետս, և Հռոմայեցիք կը թողուն զՏիգրանակերտ (61)։ Հռոմ կը
մերժէ պատգամաւորութիւնը, և կ'սկսի պատերազմն զօրավա-
րութեամբ Կեսսեննիոսի Պետոսի առն ամբարտաւանի, որ անդա-
դար կը գրէր ի Հռոմ՝ որպէս թէ ամենայն ինչ վճարեցաւ, մինչ
վճարեալ էր և ոչինչ։ Կորբուղոն մեծ հանճարով և քաջութեամբ
չթողուց Պարթևաց՝ անցնելով զԵփրատ մտանել յԱսորիս, մինչև
ստիպուիլ Պարթևաց երթալ ի Հայս ընդդէմ Պետոսի, որ ի նեղ
անկեալ՝ կը գրէր ստէպ առ Կորբուղոն գալ յօգնականութիւն ընդ-
դէմ Պարթևաց։ Մինչ Կորբուղոն կը պատրաստուէր՝ Պետոս կը
ստիպուի խօսել ի հաշտութիւն սա պայմաններով՝ որ Պարթևք թո-
ղուն ազատ հռոմայեցի լեգէոններն՝ զորս պաշարած էին, իսկ հռո-
մէական զօրն ելլէ Հայաստանէ, և Վաղարշու թոյլ տրուի ղրկել
պատգամաւորներ ի Հռոմ։ Հռոմայեցիք ամօթով կը մեկնին, գե-
րին և աւարը կ'առնուի ի նոցանէ։ Կորբուղոն կը հանդիպի փա-
խստէից, Պետոս խորհուրդ կու տայ Կորբուղոնի նորոգել պատե-
րազմը, և ի չառնուլ նորա յանձն՝ Պետոս կը մեկնի ի Կապադով-
կիա։ Յետ բանագնացութեան որ եղաւ Կորբուղոնի ընդ Վաղար-
շու՝ կ'որոշուի (62), որ Հռոմայեցիք թողուն զՀայս ազատ և Պար-
թևք քակեն ամրութիւններն, զորս շինած էին յայնկոյս Եփրա-
տայ։ Մինչ ծերակոյտն ի Հռոմ կը համարէր զՊետոս և զԿորբու-
ղոն յաղթող, և ուրախութեան տօներ կը կատարուէին՝ հրեշտակք
Վաղարշու կը հասնին ի Հռոմ (63) խնդրել զՀայաստան, զոր ար-
դէն զինու զօրութեամբ առած էին. կ'իմացուի Հռոմայեցւոց պար-

տութիւնը և կ'որոշուի նորոգել պատերազմը դարձեալ զօրավարու-թեամբ Կորբուղոնի։ Պետոս կը կոչուի ի Հռոմ և հազիւ կ'ազատի Ներոնի բարկութենէն։ Բայց այս վրդովումն Հռոմայեցւոց՝ ի ցոյց միայն էր. բաւական էր նոցա, եթէ Պարթևք խնդրէին զՀաստատան ի Հռոմայ։ Բայց և այնպէս Կորբուղոն սպառնալեօք խրատ կու-տայ Վաղարշու, որ Տրդատ խնդրէր Հայոց թագաւորութիւնն պար-գև ի Հռոմայ և Պարթևք մնային բարեկամ և դաշնակից Հռոմայ-եցւոց։ Վաղարշ որ ոչ կամէր միւսանգամ բռնուիլ ի պատերազմ՝ կ'առնու յանձն։ Կորբուղոն կը ղրկէ երկու երևելի մարդիկ առ Տրդատ յապահովութիւն, և Տրդատ կ'երթայ առ Կորբուղոն, որ կ'ընդունի զնա մեծ պատուով։ Տրդատ յետ յայտ առնելոյ Հռո-մայեցւոց զօրավարին, թէ կ'երթայ առ կայսր խնդրել թագա-ւորութիւնը ոչ իբրև պարտեալ, այլ միայն ի պատիւ կայսեր՝ հանելով թագաւորական նշանը կը դնէ կայսեր պատկերին առ-ջև, և ապա որպէս թէ առնլով ի ձեռանէ կայսեր՝ կը դնէ ի գլուխ իւր։ Կ'ընդունուի այս պայմանն երկուստեք համբուրիւ, թագաւորին (Տրդատայ) և զօրավարին։ Տրդատ յետ երթալոյ տես-նել զեղբարս իւր, զՔակուր ի Մարս, և զՎաղարշ յԵկբատանս, և առնլոյ ի նոցանէ խրատ (64) չառնուլ ինչ յանձն հակառակ պա-տուոյ Պահլաւական անուան՝ կ'երթայ մեծ բազմութեամբ և շքով առ Ներոն ի Նէապոլիս և ապա ի Հռոմ, ուր մեծ հանդիսիւ կը պսակուի ի նմին իսկ Ներոնէ։ Ի յիշատակ այսր ամենայնի՝ Ներոն կը կոչուի զօրավար (imperator) և կը պսակուի դափնւով ի Կա-պիտոլիոն։ Տրդատ մեծամեծ պարգևներով և բազմութեամբ արուես-տագիտաց ի շինութիւն Արտաշատու՝ կը դառնայ ի Հայս (66)։ Զայս փառաւոր պատմութիւն, որպէս ասացաք՝ մանր պարագանե-րով կուտայ մեզ Տակիտոս, որոյ բանք ահաւասիկ.—

«Ի նմին ամի յարեաւ պատերազմ ի մէջ Հայոց և Վրաց, և ապա տարածեցաւ ի Հռոմայեցիս և ի Պարթևս, և ետ պատճառս մեծամեծ յուզմանց ի միջի նոցա։ Վաղարշ, ծնեալ ի յոյն հարճէ՝ թագաւորէր հաւանութեամբ իւրոցն եղբարց՝ ի վերայ ազգին Պար-թևաց։ Փարսման ունէր զՎիրս ի նախնեաց անտի, և Միհրդատ եղբայր նորա պարտէր պաշտպանութեանն Հռոմայեցւոց զաթոռ թագաւորութեանն Հայոց։ Փարսմանայ էր որդի մի Հռադամիստ անուն, վայելուչ հասակաւ, ուժով մարմնոյն անհնարին, յաջողակ յամենայն հրահանգս իւրոյ երկրին և անուանի մինչև յազգս ա-րուարձանեայս։ Պատանին դժկամակէր իմն, զի ծերութիւն հօրն պահէր երկար զփոքր թագաւորութիւնն Վրաց, և կրկնէր զայս այնպէս յաճախ և այնպէս յախուռն՝ մինչև յայտնի լինել թէ ցան-

Կայր իշխանութեան հօրն։ Երկուցեալ Փարսմանայ, թէ պատանին փառասէր, անժոյժ և սիրելի ժողովրդեան գուցէ դաւ ինչ նիւթեսցէ նմա որ ի խոր ծերութիւն հասեալ էր՝ այլ իմն յոյս առաջի դնէր նմա, այն է տիրել Հայոց աշխարհին։ Իմ, ասէր, կորզեալ է զայն ի Պարթևաց և տուեալ Միհրդատայ, բայց և այնպէս զգոյշ լինել պարտ է ի վարելոյ բռնութեամբ. նենգութիւն ապահովագոյն է, և պարտ է յանկարծ ըմբռնել զնա առանց տալոյ նմա ժամանակ զգուշանալոյ անձին։ Յայնժամ Հռադամիստայ պատճառեալ, թէ գժտեալ իցէ ընդ հօրն և տեղի տուեալ ատելութեան մօրուին՝ գայ առ հօրեղբայր իւր։ Ընկալեալ ի նմանէ իբրև որդի և բազում մեծարանս վայելեալ՝ գրգռէ յապստամբութիւն զնախարարս երկրին։ Անգէտ լեալ Միհրդատայ դաւաճանութեանն՝ յաճախէր նմա պարգևս հանապազորդ։ Դարձ արարեալ ապա Հռադամիստայ առ հայր իւր պատճառանօք հաշտութեան՝ յայտ առնէ նմա, թէ այն ինչ որում ակն ունէր ի նենգութենէ՝ է պատրաստ, զինուց է վճարել զմնացեալն։ Փարսման հնարի յայնժամ պատճառս գժտելոյ ընդ եղբօրն, որպէս թէ լեալ նորա ի կռուի ընդ Աղուանս, ի կամելն կոչել զՀոռոմս յօգնութիւն՝ արգելեալ իցէ ի Միհրդատայ, վասնորոյ զվրէժն կամիցի հանել կործանմամբ նորա։ Այսպէս տայր զօր բազում ի ձեռս որդւոյն, որոյ արշաւեալ յեղակարծումն՝ ահաբեկ առնէ զՄիհրդատ, որոյ ոչ գտեալ ժամանակ կազմելոյ ճակատ՝ անկանի ի բերդն Գառնւոյ, ամուր և՛ դրիւն և՛ հռոմէական պահանորդօք ընդ հրամանատարութեամբ Կեղիոսի Պողիոնի վերակացուի և Կասպերիոսի հարիւրապետի։ Չիք ինչ որում այնպէս տգէտ են բարբարոսք՝ որպէս ի կիր արկանելոյ մեքենայս պաշարման, և չիք ինչ ընդ հակառակն յորում գլխցեն մերքն։ Այսպէս Հռադամիստ յետ քանիցս անգամ փորձելոյ առնուլ զբերդն ի զուր կամ կորստեամբ՝ յարգել արկ զամուրն, և առ գնոց յագահութենէ վերակացուին՝ զոր չէրն հնար առնուլ բռնի։ Ի զուր խնդրէր Կասպերիոս թախանձանօք՝ զայր թագաւոր դաշնակից և զթագաւորութիւնն Հայոց, ձեռակերտ հռոմէական ժողովրդեան, չմատնել դաւոյ և վաճառել ընդ ոսկւոյ։ Պողիոն պատճառէր զբազմութիւն թշնամւոյն, Հռադամիստ՝ զհրամանս հօրն։ Յետոյ ուրեմն հարիւրապետն խօսի դադարեցուցանել զկռիւն, և երթայ հաւանեցուցանել զՓարսման՝ ի բաց կալ ի պատերազմէն, կամ զգացուցանել կուսակալին Ասորւոց Ումմիդիոսի Կուադրատոսի զիրաց Հայոց։

Վերակացուն (Պողիոն) զերծեալ ի թախանձանաց հարիւրապետին՝ ստիպէ զՄիհրդատ տալ ձեռս ի Հռադամիստ։ Յուշ առնէ նմա զաղերս եղբայրութեանն, զծերութիւնն Փարսմանայ, զզօդ

խնամութեանն որ կապէր զնոսա (զՀռադամիստ և զՄիհրդատ), զնա՝ իբրև զայր դստեր նորա, և զսա՝ իբրև զաներ Հռադամիստայ։ Յիշեցուցանէր նմա զհամեստութիւնն Վրաց, որ չմերժէին զխաղաղութիւն, թէպէտև էին ի յաջողութեան, զնենգաւորութիւնն Հայոց զկարին ծանօթ, զտկարութիւն ամրոցին Թափուրքի պաշարէ, համառօտ իսկ ասել՝ զօգուտ անձնատուրն լինելոյ դաշամբ առ ի խնայելոյ հեղման արեան։ Միհրդատ չէր վստահ ի Պօղիոն, որ հրապուրեալ էր զմին ի հարճից նորա, և գիտէր զնա առ սէր ոսկւոյ յօժար առ ամենայն վատթարութիւն։ Մինչ վարանէր նա՝ Կասպերիոս գայ առ Փարսման և խնդրէ զի Վիրք բարձցեն զպաշարումնն։ Թագաւորն տայ հրապարակաւ պատասխանի մեղմեխանօք. բազում անգամ կեղծաւորի հաւանել, մինչ պատգամաւորք նորա ազդ առնեն առ Հռադամիստ՝ փութալ ճեպել ամենայն հնարիւք առնուլ զամուրն։ Պարգևք յաճախէին խակագործաց, և Պօղիոն կաշառաբեկ զիւր զօրականն արարեալ՝ գրգռէ զնոսա ի ծածուկ խնդրել խաղաղութիւն, սպառնացեալ թողուլ լքանել զբերդն։ Յանհնարս մտեալ Միհրդատայ՝ առնու յանձն խօսել ընդ Հռադամիստայ ընդ որում կռելոց էին դաշինքն, և ելանէ յամրոցէն։ Ի հասանել նորա՝ գիրկս զնովաւ արկանէ Հռադամիստ, դնէ նմա մեծարանս, կոչելով զնա հայր և աներ։ Երդնու չառնել ինչ նմա վնաս ոչ սրով և ոչ դեղով, յետոյ տանի զնա յանտառ մի մօտաւոր, ուր, ասէր, հրաման տուեալ է պատրաստել զոհս, զի խաղաղութիւնն կնքեսցի առաջի դիցն։ Սովորութիւն է թագաւորացն այնոցիկ, յորժամ դաշինս ինչ կռիցեն՝ ունել զաջոյ ձեռանէ միմեանց և կապել պնդով զբոյթսն։ Իբրև ժողովիցի արիւնն ի ծայրսն՝ թեթև ինչ ցտումն տալ ցայտել արեանն, և իւրաքանչիւր ի դաշնաւորաց անտի լիզու զարիւն ընկերին։ Այս նուիրումն արեան թուի նոցա տալ դաշինն խորհրդական իմն զօրութիւն։ Այրն որ կապելոցն էր զմատունս նոցա՝ պատճառանօք իմն գթեալ, կալաւ զբարձիցն Միհրդատայ և զարկոյց զնա յոտսայս։ Անդէն և անդ պաշարեցաւ թագաւորն ի բազմութենէն, և արկեալ ի շղթայս և յոտնակապս՝ տարաւ ընդ քարշ, որ յետին թշնամանքն են առ բարբարոսս։ Ժողովուրդն ընդ որում խստիւ վարէր թագաւորն՝ խնդրէր վրէժս թշնամանօք և շարժմամբք սպառնալեօք։ Էին և ոմանք այս մեծ փոփոխութիւն բախտին ածէր ի գութ։ Կին նորա երթայր զկնի մանր մանկամբք, և հնչեցուցանէր ողբովքն զօդս։ Մուծին զնոսա ուրոյն ի սայլս ծածկեալս, մինչև տուին հրաման ի Փարսմանայ։ Եղբայր և դուստր չէին ինչ յաչս բարբարոսին այնորիկ, և էր նա մէտ և յօժար առ ամենայն

ոճիր։ Սակայն առ ամօթոյն չետ սպանանել զնոսա առաջի իւր։ Հռադամիստ ևս յիշեաց զերդումնն, չարկ ընդդէմ հօրեղբօրն և քեռն ոչ սուր և ոչ թոյն, այլ ետ տարածանել զնոսա ի գետնի և առնել հեղձամահ, կուտեալ ի վերայ նոցա ծանր ծանր կարասիս։ Որդիքն իսկ Միհրդատայ խողխողեցան, զի յարտասուս հարան ի տեսանել զկորուստ ծնողացն (45)։

Առեալ Կուադրատեայ զհամբաւ դաւոյն, որ արկ զթագաւորութիւնն Միհրդատայ ընդ իշխանութեամբ սպանողաց նորա՝ կոչեաց զխորհրդականսն, հան նոցա զիրսն ի վեր, և հարցանէր թէ խնդրիցէ՞ արդեօք վրէժս։ Սակաւք կացին պաշտպան հասարակաց պատուոյն։ Բազումք միտեալ յապահովագոյն կողմն՝ պնդէին թէ ուրախ լինել պարտ էր նոցա մանաւանդ ընդ եղեռն օտարաց, նա՛ արժան իսկ էր արկանել զորոմն ատելութեան ի մէջ բարբարոսաց, որպէս արարեալ իսկ էր յաճախ կայսերաց Հռոմոց՝ տուեալ զնոյն իսկ զՀայաստան ոչ այնչափ իբրև պարգև, որչափ իբրև առիթ երկպառակութեան։ Թող, ասեն, Հռադամիստ վայելեսցէ զանիրաւ ստացուածն, միայն թէ վայելեսցէ ատելի և վատանուն. միթէ լաւ ևս ծառայելոց էր շահուն Հռոմայեցւոց երկիրն՝ եթէ էր փառաւորագոյն։ Այս խորհուրդ յաղթէր. այլ առ ի չթուել հաճեալ ընդ ոճիրն, և թէ գուցէ Կղաւդիոս տացէ հրամանս հակառակս՝ ստիպեցին զՓարսման թողուլ զՀայս և կոչել զորդին իւր։

Կապադովկիա ունէր կուսակալ զՅուլիոս Պեղիգնոս, այր, որում մարմնոյն տգեղութիւնն, որպէս և ոգւոյն վատթարութիւն՝ բերէր անարգանս, բայց էր նա ի մտերմաց անտի Կղաւդեայ ի ժամանակին, զի նա դեռ իբրև դոյզն ոք անցուցանէր ընդ խեղկատակս զպարապոյ ժամս իւր անմտութեամբ։ Պեղիգնոս հանէ յիւրում նահանգի գունդ մի օգնական զօրաց, որպէս թէ այսրէն նուաճելոց իցէ զՀայս, և յետ կապուտ կողոպուտ առնելոյ զդաշնակիցս մանաւանդ քան զթշնամիս՝ թողեալ յիւրոցն, կրեալ յարձակումն ի բարբարոսաց, առանց հնարից հայթայթանաց գնայ առ Հռադամիստ։ Կաշառաբեկ լեալ ի նմանէ՝ խրատ ետ նմա զառաջինն գնել զթագն, և իբրև ձեռնտու երթեալ հաստատէր իւրովն ճոխութեամբ։ Իբրև հռչակէր ամօթոյ համբաւն՝ առ ի ցուցանել, թէ ոչ ամենայն հռոմայեցի էր Պելիգնոս՝ առաքեցաւ Հեղուետիոս Պրիսկոս հազարապետ հանդերձ լեգէոնաւ, իշխանութիւն առեալ տանելոյ դարման անկարգութեանն՝ որպէս զիարդ պատշաճ նմա թուիցի։ Հեղուետիոս աճապարեալ անցանէր ընդ լեառնն Տաւրոս, և այն ինչ քաղցրութեամբ մանաւանդ քան բռնի սկսեալ էր հաստատել միւսանգամ զհանդարտութիւնն՝ առնոյր հրաման դառնալ

յԱսորիս, առ երկիւղի տալոյ պատճառս պատերազմի ընդ Պարթեւս։ Քանզի Վաղարշու համարեալ ժամ դիպող առնուլ միւսանգամ զՀայս, որ էր վաղուց հարց նորա և դաւով լեալ որս օտարաց՝ գումարեաց զօրս, և պատրաստէր դնել յաթոռ անդր զՏրդատ զեղբայր, որպէս զի տոհմայինքն համօրէն լինէին թագաւորք։ Հասանելն Պարթեւաց (51) եղև բաւական՝ առանց կռուոյ խսկ հալածել զՎիրս, և քաղաքք Հայոց, Արտաշատ և Տիգրանակերտ՝ մտին ընդ լծով։ Ապա ձմեռն սաստիկ և նուազութիւն պաշարի, թերևս առ ոչն հոգալոյ կանխաւ, և հիւանդութիւնք որ յերկուց պատճառաց աստի հասանէին ի վերայ՝ ստիպեցին զՎաղարշ թողուլ առ ժամն զպատերազմն։ Տեսեալ Հռադամիստայ թողեալ զՀայս՝ գայր մտանէր անդր աճեղագոյնս քան զառաջինն. ունէր ապըստամբութիւն մի ի նուաճել, և երկնչէր թէ միւս ևս նոր յառնիցէ։ Արդարև Հայք, թէպէտ մէտք ի ծառայութիւն՝ չկարացին ունել ժոյժ, և ընթացան ի զէնս պաշարել զապարանսն։ Հռադամիստ չեգիտ այլ պաճարանս բաց յօրագութենէ երիվարաց իւրոց, և անկանէր փախստական (53) հանդերձ կնաւն որ էր յղի. այլ երկիւղ թշնամւոյն և գութ ամուսնութեանն ետուն նմա զօրութիւն, և տոկաց որչափ և մարթէր զառաջինն նեղութեան ճանապարհին։ Այլ ի սուէպն սարսելոյ ի յերկարել ուղւոյն՝ տագնապեալ աղաչէր զայր իւր զերծուցանել զնա պատուաւոր մահուամբ ի թշնամանաց գերութեանն։ Հռադամիստ գիրկս արկանէր նմա, մատուցանէր քաջալերս. մերթ ընդ քաջութիւն նորա զարմանայր և մերթ երկնչէր թողուլ զնա յայլոց ձեռս։ Յետոյ ուրեմն վառեալ ի նախանձուէ, և զի սովոր ևս էր ի մեծամեծ ոճիրս՝ հանեալ զդաշոյնն հար զնա, և քարշեալ յափն Երասխայ՝ ընկենոյր զնա ի յորձանս գետոյն, զի և զդին իսկ նորա չիցէ հնար հանել, և ինքն շտապաւ հասանէր ի թագաւորութիւն անդր հօրն։ Իսկ զԶենոբիա (այս էր անուն կնոջն) ածին մեղմով ջուրքն ի խաղ անդր գետոյն, մինչդեռ շունչն ի ռնգունսն էր և տայր նշանս կենդանութեան։ Տեսեալ հովուաց զտիկինն և յազնուականութենէ դիմացն գուշակեալ, թէ չէր ի դոյզն տոհմէ՝ կապեցին զվէրսն, և արկին սպեղանիս որ ծանօթ են ի շէնս, տեղեկացեալ ապա զանուանէն և զպատահարէն՝ տարան զնա յԱրտաշատ քաղաք։ Անտի ածաւ նա խնամով իշխանացն առ Տրդատ, որ ընկալաւ զնա մարդասիրութեամբ և պահէր զնա իբրև դշխոյ։

Ի կատարածի տարւոյն (54) գուժկան հասանէր ի Հռոմ, թէ Պարթեւք խլրտեցան միւսանգամ և արշաւեալ ի Հայս մերժեցին զՀռադամիստ, որ բազում անգամ տէր երկրին և բազում անգամ

փախստեայ՝ հրաժարեալ իսկ էր յայնժամ ի պատերազմէ։... Ներոն տայր կոչել, առ ի լնուլ զթիւ լեգէոնացն արեւելից՝ գունդս ի մերձաւոր նահանգաց և տայր հրաման լեգէոնացն՝ խաղալ ի վերայ Հայոց։ Հրամայէր նոյնպէս երկուց հնազոյն թագաւորաց, Անտիոքոսի և Ագրիպպայ՝ ունել զզօրս իւրեանց կազմ և պատրաստ ի մտանել յերկիր անդր Պարթեւաց։ Կամուրջք անկան ի վերայ Եփրատայ. Փոքր Հայք հանդերձ զարդուք թագաւորութեանն տուան Արիստոբուղեայ, և աշխարհն Ծոփաց՝ Սոյեմայ։ Այլ յառնէր յայնժամ ընդդէմ Վաղարշու նորին որդի Վարդան, և Պարթեւք թողուին զՀայս, և պատերազմն յապաղէր։ Կարեւորութիւն իրացն ստուարանայր ի ծերակուտին, որ տայր պատուէր՝ աւուրս բազումս մատուցանել դիցն գոհութիւնս, յոր յաւելաւ և այն թէ Ներոն արկցէ հանդերձս ձաղանաց ցորչափ գոհութիւնքն ձգիցին, մտցէ ի Հռոմ կատարել նուէրս ձօնեաց, և կանգնեսցին նմա անդրիք ըստ չափոյ անդրեացն Արեայ վրէժխնդրի, որպիսիք կային ի մեհենի անդ նորա։ Ընդ ողոքանացն խառնէր և ուրախութիւնն տեսանելոյ զԿորբուղոն ընտրեալ՝ յազատել զաշխարհն Հայոց, և ամենեցուն կարծիք այն էին, թէ բացաւ ասպարէզ արժանաւորաց։ Գունդք արեւելից բաժանեցան այսպէս. մի մասն օգնական զօրուն և լեգէոնք երկու մնացին յԱսորիս ընդ հրամանաւ Ումմիդեայ Կուադրատեայ կուսակալի նահանգին, նոյնչափ թուով Հռոմայեցիք և օտարականք տուան Կորբուղոնի, հանդերձ վաշտիւք և այրուձիով որ էին ի ձմերոցս ի Կապադովկիա։ Թագաւորք դաշնակիցք առին հրաման հնազանդել միումն կամ միւսում ըստ օրինի պիտոյից պատերազմին. այլ եռանդն նոցա միտէր մանաւանդ ի Կորբուղոն անդր։ Զօրավարս այս, առ ի կորզել յանձն իւր զհամբաւ, որոյ ազդեցութիւնն մեծ է ի սկզբան մեծամեծ գործոց՝ խաղայ արագ յԵղիս քաղաք Կիլիկեցւոց։ Անդ գտանէր նա զԿուադրատոս որ եկեալ էր մինչև անդր առ երկիւղի, զի եթէ մտցէ Կորբուղոն յԱսորիս առնուլ զզօրս նորա՝ կորզիցէ յինքն զամենեցուն աչս. զի էր նա բարձր հասակաւ, բանիբուն լեզուաւ, և հանդերձ հմտութեամբն և հանճարով՝ ունէր զարտաքին ինչ հանգամանս որ ունին զիւրեանց ազդեցութիւն։ Արդ՝ երկոքին զօրավարք մեր տային խորհուրդ Վաղարշու ի ձեռն հրեշտակաց՝ առնել նախամեծար զխաղաղութիւն քան զպատերազմն և նմանել ակնածութեան իւրոց նախնեաց, տալով պատանդս Հռոմայեցւոց։ Վաղարշ առ առնելոյ զպատրաստութիւնս պատերազմին ի պարապի և կամ առ հեռացուցանելոյ պատճառանօք պատանդութեան, յորոց ոսոխութենէն կասկածէր՝ առաքէր պատանդ ի մեծամեծաց

անտի Արշակունեաց։ Ընկալաւ զնոսա Հիստէոս հարիւրապետ, որոյ առաքեալ ի Կուադրատեայ և հասեալ զառաջինն՝ խօսէր վասն իրացն ընդ Թագաւորին։ Յայս համբաւ Կորբուղոն հրամայէր զընդապետին Արրիոսի Վարոսի երթալ առնուլ զնոսա ի ձեռաց նորա։ Յարեաւ կռիւ ի մէջ գնդապետին և հարիւրապետին, և առ ի չտալոյ ընդ երկար տեսիլ նշաւակի բարբարոսացն՝ կացուցին իրաւարար զպատանդսն գլխովին և զհրեշտակսն որ ածէին զնոսա։ Սոքա ի մեծարանս նորոյ փառաց և տեղի տուեալ, թէպէտև թշնամիք, ծածուկ իմն յօժարութեան՝ նախամեծար զԿորբուղոն առնէին։ Գժտութիւնն սկսաւ յայնժամ ի մէջ երկուց զօրավարացն։ Կուադրատոս քանքատէր, եթէ հանաւ ի նմանէ պտուղ բանագնացութեանն. Կորբուղոն բողոքէր ընդ հակառակն, թէ Պարթևք հաճեցան տալ պատանդս՝ յորժամ փոխեցի ես, ասէ, յերկիւղ զյոյս նոցա որ յառաջն ընտրեալ էին զպատերազմն։ Ներոն առ հաշտեցուցանելոյ զնոսա եհան համբաւ, թէ ի պատիւ յաջողութեանցն Կուադրատեայ և Կորբուղոնի խրձունք կայսեր զարդարելոց էին դափնեօք։

Մինչ այս մինչ այն՝ Տրդատ յաւելոյր յիւր կողմն անդր զօգնականութիւն եղբօր իւրոյ Վաղարշու, և այնուհետև ոչ ևս գաղտագողի յարձակմամբ, այլ յայտնի իսկ պատերազմաւ աւերէր զաշխարհն Հայոց, կողոպտեալ՝ զորս միանգամ կարծէր միտեալս ի մեր կոյս, զգոյշ լեալ ի պատահելոյ զօրուն առաքելոյ ի վերայ նորա. համառօտիւ՝ սրացեալ ընդ ամենայն կողմանս և գործեալ ահ և երկիւղ համբաւուով արշաւանացն քան զօրութեամբ զինուց։ Կորբուղոն յետ ի. զուր ջանալոյ պատահել նմա պատերազմաւ, վրիպեալ յակնկալութենէ իւրմէ և ստիպեալ, ըստ օրինակի թշնամւոյն, տանել զպատերազմն ի տեղիս տեղիս՝ բաժանէր զզօրսն, զի հրամանատարք նորա և զօրագլուխք մարթիցեն յարձակել ի կողմանց կողմանց միանգամայն։ Ազդ առնէր և Անտիոքոսի՝ մտանել ի նահանգսն սահմանակիցս։ Իսկ Փարսմանայ սպանեալ էր իբրև մատնիչ զորդին իւր զՀռադամիստ, և առ ի ցուցանել զհաւատարմութիւն իւր առ մեզ՝ յագեցուցանէր անխնայ զատելութիւն իւր հին ընդդէմ Հայոց։ Հուսկ ուրեմն Ինսիկացիքն, ազգ նշանաւոր ընդելութեամբն առ Հռոմայեցիս, ձգեալ յայնժամ զառաջինն ի մեր դաշնակցութիւն՝ ասպատակէին յանկոխ և ի դժուարին տեղիս Հայոց։ Այսպէս վրիպեալ Տրդատայ յորմէ եդեալն էր ի մտի՝ առաքէր հրեշտակս հարցանել յանուն իւր և Պարթևաց. ընդէ՞ր, ասէ, մինչ պատանդք տուան, և բարեկամութիւնն նորոգեալ՝ թուէր իմն աւետել թէ ի նոր բարութիւնս վայելելոց իցեմք՝

մերկացուցանէք զմեզ ի նախնի ստացուածոց մերոց։ Ցաւելոյր ևս, թէ եթէ Վաղարշ չառնէ ձեռն ի գործ՝ պատճառք այն են զի ընտրէ մանաւանդ խնդրել զիրաւունսն քան դիմել ի զօրութիւն զինուց. սակայն եթէ Հռոմայեցիքդ յամառեալ կայցէք ի պատերազմն՝ Արշակունիք գտցեն միւսանգամ զզօրութիւնն և զբախտ՝ զորս պարտութիւնք Հռոմայեցւոց նշանաւորս գործեցին առաւել քան մի անգամ։ Կորբուղոն, որ գիտէր եթէ ապստամբութիւնն ի Վրկանս արգելեալ ունէր զՎաղարշ՝ ի պատասխանիսն տայր խրատ Տրդատայ՝ աղերս պաղատանաց արկանել ի կեր առ կայսեր փոխանակ զինուց. «Այսպէս, ասէ, մարթ իցէ քեզ բերել ի ձեռս իշխանութիւն իմն տևական և գահ առանց արիւնհեղութեան, եթէ փոխանակ հեռաւորն և անագան յուսոյ՝ լինիցիս զհետ այնմ որ մերձաւորագոյնն և ապահովագոյնն է։ Ապա քանզի սուրհանդակք որ երթային և գային՝ չեղեն նպաստ ի հաստատութիւն խաղաղութեանն՝ առաջի եդաւ լինել ժամադիր, զի գլխաւորքն երկոցունց կողմանց մտցեն անձամբ ի խորհուրդ։ Տրդատ կամէր երթալ ի ժամադրութիւնն երիւք հազարօք, իսկ Կորբուղոն չառնէր յայտ զթիւ համարոյ զօրուն որ ընդ նմայն երթալոց էին։ Միայն թէ, ասէ, գայցեն պատրաստութեամբ խաղաղութեան, առանց սաղաւարտից և զրահից։ Ոչ ոք, մանաւանդ այր զօրավար ծեր և զգօն, տայր անձին թոյլ անկանել ի խաբս բարբարոսին։ Թիւն այն սահմանեալ վասն միոյ զօրավարի, և առանց սահմանի վասն միւսոյն՝ ծածկէր դարան։ Առիմէ՞ բազմութիւն զինուորաց, եթէ կայր հանել զնոսա անզէնս յանդիման այրուձիոյ որ կորովի աղեղնաւորքն էին։ Սակայն և այնպէս Կորբուղոն, որպէս թէ չունէր ինչ ամենևին կասկած՝ ետ պատասխանի, թէ պատշաճագոյն ևս էր զիրաց որ այնպէս կարևորն էին երկուց ազգաց՝ խօսել յանդիման երկուցն բանակաց։. Ապա ընտրեաց տեղի մի, որոյ մի կողմն, զառիվայր մեղմ, դիւրողագոյն էր ընդունել զգունդս հետևակացն, և միւս կողմն, հարթ հաւասար դաշտաձև, թողոյր հեծելազօրուն լայնեալ տարածանել։ Ի ժամադիր ժամուն, Կորբուղոն հասեալ զառաջինն՝ կացուցանէր ի թևս զգունդսն օգնականս և զզօրս թագաւորաց դաշնաւորաց. ի միջոցին կարգէր զվեցերորդ լեգէոնն, ամրացեալ երեք հազար արամբք երրորդին, զոր հանեալ էր գիշերայն յայլմէ բանակէ։ Թողոյր արծուի մի միայն առ երևեցուցանելոյ, թէ մի լեգէոն և եթ իցէ։ Օրն տարաժամէր, յորժամ երևեցաւ Տրդատ, այլ այնպէս ի բացուստ, զի դիւրագոյն էր տեսանել զնա քան լսել։ Զեղև հնար գալ ի մի վայր, և զօրավարն հռոմայեցի եմոյծ միւսանգամ զզօրսն իւրաքանչիւր յիւր ճամբար։

Թագաւորն, և՛ առ ի խուսել ի դարանակալաց, զորոց տայր նմա կասկածել խաղալ մերոյ զօրուն ընդ բազում կողմանս, և՛ առ հատանելոյ զճանապարհ պաշարին որ գայր մեզ յԵւքսինոս ծովէ և ի Տրապիզոնէ՝ մեկնեցաւ շտապաւ, այլ չկարաց զքաումբ ածել զպաշարն, զի որք բերէինն՝ գնացին զլեառն լեռնայն, կալեալ Հռոմայեցի զօրօք։ Եւ այլուստ, առ արգելուլ զերկարել պատերազմին յանօգուտս և ստիպել զՀայս պաշտպանել անձանց՝ Կորբուղոն եդ ի մտի աւերել քանդել զամուր ամուր տեղիս նոցա։ Ամրագոյն վայր գաւառին կոչէր Վողանդ (թերևս Վանանդ՝ ըստ Գաթըրճեանի, Բ, 113)։ Կորբուղոն յանձն առ իւրովի արկանել պահ զտեղւոյն, և զորս չէինն այնչափ կարևոր՝ յանձն առնէր Կոռնեղեայ և Փղակկեայ տեղակալի և Ինստէեայ Կապիտոնի վերակացուի բանակատեղւոյն։ Ցետ այց առնելոյ տեղւոյն շուրջանակի և յարդարելոյ զամենայն ի յարձակումն՝ քաջալերէր զզօրն ընդդէմ թշնամւոյն, որ թափառէրն և չկամէր ոչ ընդ խաղաղութիւն և ոչ ընդ պատերազմ, և որ խուսելովն յայտ իմն առնէր զիւր վատութիւն և զնենգութիւն։ Ցորդորէր զնոսա հանել ի նըմանէ զապաւէնս նորա և ցուցանէր նոցա փառս և զաւար միանգամայն։ Ապա բաժանէր զզօրսն ի չորս առաջս. մին առեալ զկրայսն մերձենայր ի խլել զպարիսպն. միւսն առնոյր պատուէր կանգնել զսանդուղսն. մեծի իմիք բազմութեան տայր հրաման արձակել մեքենայիւք նիզակս և ջահս. հուսկ ապա կացուցանէր ի դիպան վայրի պարսաւորս, որ տեղայցեն ի հեռաստանէ վիրգս իրև զկարկուտ։ Այսպէս տագնապեալ թշնամւոյն յամենայն կողմանց՝ չկարիցէ, ասէր, առաքել ուրեք օգնականս։ Այնպիսի իմն էր եռանդ զօրուն՝ զի յառաջ քան զերրորդ մասն աւուրն առնէր զպարիսպն հարթ յատակ, զդրունսն խորտակէր, ելանէր սանդղովք յամուրս անդր, զամենայն այր հասակաչափ անցուցանէր ընդ սուր, իսկ մերքն ունէին վիրաւորս սակաւ, մեռեալ՝ և ոչ զմի ոք։ Խուժանն որ չէր յաջողակ ի կռիւ՝ եղև վաճառակուր, և մնացորդ աւարին թողաւ յաղթողաց։ Տեղակալին և վերակացուին հանդիպէր նոյն յաջողութիւն։ Երեք ամրոցք առան ի միում աւուր ահիւ կամ կամակար մտօք բնակչացն, և մնացեալքն եղեն անձնատուր։ Այնուհետև Կորբուղոն համարէր զանձն ձեռնհաս յարձակել ի վերայ Արտաշատու, որ մայրաքաղաքն էր երկրին, և իսկ և իսկ խաղացոյց անդր զզօրն։ Երասխ գետ հոսէ առ պարսպօք քաղաքին, և եթէ անցուցանէր զնոսա ընդ կամուրջն՝ արկանէր զլեգէոնն ընդ հարուածովք թշնամւոյն։ Անցին ըստ գետն հեռագոյն ընդ հուն մի լայն և ընդարձակ։ Տրդատ տատանէր իմն ի մէջ ամօթոյ և

երկիւղի. Թողուլ առնել զպաշարումնն՝ էր խոստովանել զիւր տըկարութիւն. իսկ արգելուլ զնա ոչ իշխէր առանց արկանելոյ զանձն և զայրուձին յանկոխ տեղիս։ Եդ ի մտի կալ ճակատեալ և սպասել այգուն լինելոյ, թէ ի կռուել արդեամբ, և թէ արկանել զմեզ յորոգայթ ինչ՝ պատճառելով փախչել։ Բարբարոսքն խուժէին յանկարծ շուրջ զբանակաւն Հռոմայեցւոց, այլ ոչ գտին ի զեղծի զզօրավարն, որոյ էր կազմեալ պատրաստեալ զամենայն ինչ և՛ ի խաղալ յառաջ և՛ ի մարտնչել։ Երրորդ լեգէոնն յառաջանայր յաջմէ, վեցերորդն՝ ի ձախմէ, ընտիր ընտիրքն ի տասներորդէն՝ ի միջոցին։ Կարասին եդեալ էր ի մէջ ճակատուցն, և հեծեալք հազար կային վերջապահք, առեալ պատուէր լինել դիմակալ՝ եթէ կրիցեն յարձակումն, այլ չլինել երբէք հետամուտ։ Վաշտքն և աղեղնաւորք և մնացորդ այրուձիոյն կային զօրավիգն թևոցն. ձախ թևն երկայնեալ ձգէր առ ստորոտով բլրոցն, որպէս զի թըշնամին, եթէ փորձիցէ մտանել զհետ՝ տեսցէ յարձակումն յառաջոյ և ի կողից միանգամայն։ Տրդատ տագնապեցուցանէր զմեզ յիւրմէ կուսէ, առանց իշխելոյ մերձենալ մինչև ի նետընկէց մի, և թուէր իմն մերթ սպառնալ և մերթ զանգիտել, յուսացեալ խախտել զմեր ճակատս և խոյանալ ի վերայ մերոց գնդից զատուցելոց. այլ չեղև գամագիտ ըստ յանդգնութեանն. հարիւրապետ մի միայն հեծելոց տարեալ յանզգաստս անկանէր նետահար։ Մահ նորա լինէր այլոց ի խրատ զգուշութեան, և ի մերձենալ գիշերոյն մեկուսանայր թշնամին։

Կորբուղոն եհար բանակ անդէն ի տեղւոջն, և ժամ դիպող համարեալ զգիշերն՝ խորհէր զառաջինն երթալ լեգէոնօքն, առանց կահուց կարասեաց, պաշարել զԱրտաշատ, ուր կարծէր ապաստանեալ զարքայն. այլ տեղեկացեալ նորա ի լրտեսաց, թէ Տրդատ հեռանայր, առանց ուրուք գիտելոյ թէ ի Մարս ինչ կամ յԱղուանս երթայցէ՝ յապաղեաց մինչև յայգն, և ետ խաղալ յառաջ թեթևազոյն գնդաց՝ պատուէր տուեալ պաշարել զամուրն և սկիզբն առնել յարձակմանն ի հեռաստանէ։ Այլ բնակիչքն բացին զդրունսն և եղեն անձնատուր Հռոմայեցւոց հանդերձ ամենայնիւ զոր ունէին (58)։ Այս լինէր ի նոցա փրկութիւն. այլ քաղաքն եղև հրձիգ և աւերեցաւ ի հիմանց, քանզի ի պահել զնա պիտոյ էր գունդ մեծ պահանորդաց, զի էր մեծ և ընդարձակ քաղաքն, և ոչ գոյին մեր գունդք ըստ բաւականին ի բաժանել զնոսա ի գործ պատերազմի և ի պահ այնպիսի տեղւոյ։ Այլազգ դարձեալ, թողուլ կանգուն զքաղաքն առանց դնելոյ զնա յապահովի՝ էր կորուսանել զփառս և զպտուղ յաղթութեանն։ Պատմի իմն, թէ երկնից կամք յայտնի

եղեն նշանաւ իմն. արև պայծառ լուսաւորէր զարտաքոյս քաղաքին, մինչ յանկարծ որ ինչ ի ներքս էր՝ ծածկէր թանձր մառախղով, և փայլատակունք հատանէին։ Գուշակ իմն համարեցաւ այս, թէ դիքն ցասուցեալ մատնէին զքաղաքն ի կորուստ։ Ներոն վասն այսպիսւոյ յաջողութեան ողջունեցաւ կայսր. ծերակոյտն սահմանէր գոհութիւնս դիցն, և իշխանին՝ անդրի պատկեր, կամարս յաղթութեան և պատիւ հիւպատոսութեան ամաց բազմաց։ Խնդրեցաւ ևս տօնս տարեկանաց կատարել ի յիշատակ աւուրցն, յորս յաղթութիւնն հանաւ ի գլուխ և եղև ծանօթ ի Հռոմ և աւետիքն տուան ծերակուտին, թող զայլ անթիւ փաղաքշանս անչափս, մինչև ասել Կասեայ, թէ եթէ հասարակաց շնորհակալութիւնն պարտէր զիւր պատիւ մեծարանաց հաւասարել երախտեաց երկնից՝ զամն ողջոյն հանել ի գոհութիւնս չէր բաւական, սակայն պիտոյ էին աւուրք գործոյ՝ որպէս աւուրք նուիրականք, զի և՛ դիքն պատուեսցին, և՛ գործոց մարդկան չառնիցի խափան։

Սակայն Կորբուղոն, որ հիմն ի վեր տապալեաց զԱրտաշատ, կամեցաւ. մինչդեռ տիրէր սարսափն՝ առնուլ և զՏիգրանակերտ, զի երկիւղս առաւելուցու ահն և հոյն բնակչացն, յորժամ և զայն քաղաք ևս տեսանիցեն աւերեալ, և կամ խնայելով նոցա շահիցի համբաւ ողորմածութեան։ Ապա խաղայր գնայր առանց վնասելոյ ումեք, զի մի՛ յուսահատ յուսաբեկ առաջի իւր զբնակիչսն առնիցէ. այլ գնայր ոչ յանզգոյշս վասն յեղյեղուկն բուսոյ բարուց բնակչացն, որ հեղգն և երկչոտ են ի տեսանել զվտանգն, այլ ցանգ յօժարք ի նիւթել զմատնութիւն։ Բարբարոսքն իւրաքանչիւր ըստ իւրոց բարուցն մատչէին իբրև աղաչաւորս, և կամ թողեալ զշէնս իւրեանց և զաւանս՝ աճապարէին ի փախուստ ընդ ճանապարհս անկոխս։ Էին ևս որ յայրս և ի փապարս ղօղէին հանդերձ ամենայնիւ որ պատուական էր նոցա։ Զօրավարն հռոմայեցի գնայր իմաստութեամբ—առնելով երեսս աղաչանաց և պնդէր ճեպով զկնի փախստէիցն։ Էր անխնայ առանց ողորմութեան առ որս ի գետնափոր տեղիս ապաստանէին. փակէր զմուտս ապաստանաց նոցա խռուօք և մացառօք, և այրէր զապաստանեալսն ի ներքս կենդանւոյն։ Յանցանել նորա զսահմանօք Մարդաց, ազգ կիրթ յաւազակութիւն և պաշարեալ անմատոյց լերամբ՝ նեղէր զնոսա ասպատակութեամբ։ Առաքեաց ի վերայ նոցա զՎիրս ապականել զերկիր նոցա, և այսպէս զխակութիւն նոցա պատժեալ պատուհասէր արեամբ օտարաւ։ Սակայն եթէ Կորբուղոն և զօրք նորա ոչինչ կորուսին պատերազմաւ՝ բովանդակ զօրութիւն նոցա

ընկճէր ընդ բեռամբ աշխատութեան և տառապանաց։ Ստիպեալք ուտել զմիս արջառոց միայն, նուազութիւն ջրոյ և ամառն տօթակէզ, ստէպն և երկայն չու—հասուցին զնոսա ի յետին տագնապ, զոր ամոքէր սակաւիկ մի համբերութիւն զօրավարին միայն, քանզի և նա իսկ կրէր վիշտս առաւել քան զյետինն ի զօրականաց։ Եկին ապա ի տեղիս մշակեալս և քաղեցին զհունձն։ Ցերկուց բերդաց անտի յորս ապաստանեալ էին Հայք՝ մին առաւ յարձակմամբ, իսկ այն որ մնաց զառաջին յարձակումնն՝ չկարաց զդէմ ունել պաշարմանն։ Անտի անցանէին յերկիրն Տարօնոյ, ուր Կորբուղոն զերծաւ յաջողութեամբ յանակնկալ իմն վտանգէ։ Ոմն յաւագաց անտի թշնամւոյն ըմբռնեալ ոչ հեռի ի վրանէ անտի զօրավարին դաշոյն ի ձեռն, և արկեալ ի խոշտանգանս՝ խոստովան լինէր թէ էր գլուխ դաւաճանութեան իբրք, և թէ զիա՞րդ ի գլուխ ելանելոց էր դաւն և ո՞յք գործակիցքն էին՝ յայտնէր։ Որոց ընդ պատրուակաւ բարեկամութեան նիւթեալ էր զդաւն՝ խայտառակեալ ընկալան զպատիժ պատուհասին։ Յետ սակաւ միոյ գային պատգամաւորք ի Տիգրանակերտէ, թէ բաց էին դրունքն, և էր քաղաքն պատրաստ ընդունել զհրամանսն։ Առաքէր և պսակ յոսկւոյ, իբրև գրաւական հիւրընկալութեանն։ Կորբուղոն ընդունէր պատուով զպատգամաւորսն, և չառնոյր ինչ ի քաղաքէն, զմտաւ ածեալ թէ ևս իմն աւելի կամակար հպատակութիւնն եղիցի փոխարէն բարերարութեանն։ Այլ միջնաբերդն, ուր ապաստանեալ էին երիտասարդք անվեհերք՝ ոչ նուաճեցաւ առանց կռուոյ։ Նմ ելեալք յամրոցէն տային պատերազմ, և մղեալք յետս՝ յետուստ ուրեմն տային տեղի, մինչ յառնուլ էր բերդն։ Այսչափ յաջողութեան (Կորբուղոնի) լինէր նպաստ պատերազմն Վրկանից, զորով զբաղեալ էին Պարթևք։ Վրկանից առաքեալ ևս էր առ կայսր խնդրել ի նմանէ լինել բարեկամ նիզակակից, յայտ արարեալ ի հանդէս բարեկամութեան իւրեանց զզբաղումնն զոր տային Վաղարշու։ Եւ զի վտանգ առաջի կայր պատգամաւորացն, ի դարձին իւրեանց լինել ձերբակալ յայնկոյս Արածանւոյ ի վերջապահ գնդէ անտի թշնամւոյն՝ Կորբուղոն դնէր ընդ նոսա զօրս՝ յուղարկել զնոսա մինչև յափունս Կասպից ծովուն, ուստի դարձան նոքա յերկիր իւրեանց, խոյս տուեալ ի սահմանաց Պարթևաց։

Տրդատ փորձէր մտանել ի Հայս ընդ աշխարհն Մարաց։ Զօրավարն (Կորբուղոն) անդէն զօրահատոյց լինէր, և տայր զգումարտակն ի ձեռս Վերուղամեայ տեղակալի հանդերձ օգնականօքն, և ինքն արագ արագ զհետ լինէր նմա լեգէոնօքն և ստիպէր զթշնամին ի փախուստ աճապարել, ի բաց կացեալ ի խորհրդոյն

զոր ունէր պատերազմել։ Ապա ուրեմն յետ մաշելոյ ի սուր և ի
հուր զորս միանգամ գիտէր թէ առ գուժ թագաւորին էին թըշ-
նամութեամբ ընդ Հռոմս՝ լինէր տէր Հայոց աշխարհին, մինչ
երևէր Տիգրանէս, ընտրեալ ի Ներոնէ ի թագաւորութիւն աշխար-
հին։ Տիգրանս այս, ծնեալ յերևելի տոհմէ Կապադովկացւոց՝ էր
թոռն Արքեղայոսի արքայի, այլ արգելեալ բազում ժամանակս ի
Հռոմ իբրև պատանդ՝ բերէր յանձին ոգի վատ և գետնաքարշ իբ-
րև զգերւոյ։ Ոչ առանց հակառակութեան լինէր նա ընդունելի։
Արշակունիքն տիրէին դեռևս ի միտս ոմանց, այլ մեծ մասն ազ-
գին, զչարեալք ընդ գոռոզութիւնն Պարթևաց՝ նախամեծար առ-
նէին զթագաւոր տուեալ ի Հռոմայեցւոց։ Առ Տիգրանաւ թողու-
լեգէոն մի հազար արանց, գունդք երեք ի դաշնաւորաց, երկու
թևք հեծելոց. և զի դիւրին ևս լիցի նմա պահել զիւր նորածին
իշխանութիւնն՝ Փարսմանայ, Պողեմոնի, Արիստոբուղեայ և Ան-
տիոքոսի տուան ի Հայոց գաւառք մերձաւորագոյնք յերկիր նոցա։
Կորբուղոն դարձաւ յԱսորիս, որոյ մնացեալ առանց կուսակալի յետ
մահուն Կուադրատեայ՝ յանձն եղև նորա խնամոց և փութոյ։ Սա-
կայն թագաւորն Պարթևաց Վաղարշ, իմացեալ զյաջողութիւն
Կորբուղոնի և տեսեալ զօտարն Տիգրան եդեալ յաթոռ թագաւո-
րութեանն Հայոց՝ դնէր նախ ի մտի հանել զվրէժն Արշակունեաց,
թշնամանս համարեալ զմերժել եղբօր իւրոյ Տրդատայ։ Զմտաւ-
ածեալ ապա զՀռոմայեցւոցն մեծութիւն և զշուք հնոյ և հաս-
տատուն նիզակակցութեան՝ յետս կայր ի խորհրդոյն։ Ի բնէ դան-
դաղկոտ՝ վարանէր մանաւանդ յապստամբութենէն Վրկանից, ազգ
հզօր, և յանթիւ պատերազմաց յոր բռնադատեաց զնա վտա-
րանջութիւնն այն։ Մինչ այսպէս երերեալ տատանէր նա՝ համ-
բաւ նորոյ իրիք թշնամանաց գայր խթանել զդանդաղութիւն նո-
րա։ Տիգրան ելեալ ի Հայոց ապականէր զԱդիաբէն երկիր սահ-
մանակից Պարթևաց սաստիկ ասպատակութեամբք, որ չէին ընդ-
հատ յաւազակութենէ։ Մեծամեծք (Պարթևաց) տրտնջէին դառ-
նութեամբ։ Ցո՞րպիսի անարգութիւն իջաք, ասեն, մինչև նուաճել
մեզ ոչ ի զօրավարէ հռոմայեցւոյ, այլ ի յանդուգն համարձակու-
թենէ պատանդի, ծիւրելոյ և ծնգելոյ այնչափ ամս ի մէջ գե-
րեաց։ Մանաւանդ որ իշխէրն Ադիաբենայ՝ գրգռէր զցասումն նոցա,
հարցեալ թէ զո՞ պարտ էր նմա կարդալ յօգնութիւն և առ ո՞
դիմել։ Ի Հայոց, ասէին, հրաժարեցաք, և մնացեալն ևս երթիցէ
զհետ՝ եթէ Պարթևք չկամիցին կալ պաշտպան։ Անձնատուր լինել
ի Հռոմայեցիս լաւագոյն իցէ քան նուաճել. այն գերութիւն իցէ
մեղմագոյն։ Իսկ Տրդատէս, անկեալն յաթոռոյն և փախստեալ՝

լռութեամբ և մեղմով իմն քրթմնջելով գործէր հզօրագոյն ևս ազդեցութիւն։ Ոչ, ասէ, ոչ եթէ վատութեամբ մեծամեծ տէրութիւնք կայցեն կանգուն. մարդիկ, զէնք, պատերազմունք պիտոյ են։ Ի մէջ տէրութեանց՝ արդարութիւն բռնութիւնն է։ Պահել զոր ինչ իւրն է՝ շատ իցէ առանձին մարդոյ. կռուել վասն այնր որ այլոց է՝ փառք են առն թագաւորի։

Տեսեալ Վաղարշու զայս ամենայն՝ կոչէ զաւագանին ի խորհուրդ և կացուցեալ զՏրդատ ի միջի՝ խօսի զայս օրինակ. «Իշխանս այս է նմին հօրէ յորմէ եսս՝ եթող ինձ, վասն աւագութեան տիոցս, զազնուագոյն թագն, և ես ետու նմա զՀայս, զերրորդ գահ մերոյ ազգատոհմին։ (Քանզի Բակուր ունէր զՄարացն)։ Այսպէս թուէր ինձ պահել զտոհմն մեր յատելութենէ և յոսոխութենէ որ անդստին սովոր են տիրել ի մէջ եղբարց։ Հռոմայեցիք հակառակ կացին այսմ, և զխաղաղութիւնն զոր ոչ պղտորեցին նոքա երբէք առանց կրելոյ զպատիժ պատուհասին՝ խզեն այսօր ևս առ իւրեանց եղեռանէ։ Ես արդարև արդարութեամբ մանաւանդ քան արեամբ, բանագնացութեամբ քան զինուք կամեցայ զառաջինն պահել զաշխարհս նուաճեալս յիմոց նախնեաց։ Եթէ սխալեցայ ինչ այսպէս դանդաղելով՝ ուղղեցից զսխալն քաջութեամբ։ Զօրութիւն ձեր գոնեայ և փառք՝ են ողջ բովանդակ. յայնր վերայ ունիք և զպատիւ համեստութեան, զորով աւագագոյն մարդկան իսկ չէ պարտ արհամարհել և որ առ դիսն իսկ մեծարգի է»։ Ապա եդեալ պսակ ի գլուխ Տրդատայ՝ տայր Մոնեսայ, միում յաւագաց անտի, զհեծելագունդ իւրոց թիկնապահացն հանդերձ օգնականօքն Ադիաբենացւոց և պատուիրէր հանել զՏիգրան յաշխարհէն Հայոց, և ինքն յետ խօսելոյ ի հաշտութիւն ընդ Վրկանից՝ հանէր ի միջոցի անդ տէրութեան իւրոյ բանակ ահեղ և սպառնայր նահանգացն Հռոմայեցւոց։ Լուեալ Կորբուղոնի զայս ամենայն ի ստոյգ համբաւուց՝ առաքէ յօգնութիւն Տիգրանայ զՎերուղանոս Սևերոս և զՎետտիոս Բողանոս լեգէոնօք երկու, գաղտ հրաման տուեալ խաղալ գնալ զգուշութեամբ մանաւանդ քան շտապ տագնապաւ, քանզի լաւ համարէր ունել պատերազմ քան առնել։ Նա և գրէր առ կայսր, թէ պիտոյ էր ոք առանձինն գլուխ ի պաշտպանել զՀայոց աշխարհն, և թէ Ասորւոց աշխարհն որում սպառնայր Վաղարշ՝ էր յևս իմն մեծի վտանգի։ Մինչ այս մինչ այն՝ կարգէր դնէր զմնացորդս լեգէոնացն զափամբ Եփրատայ, վառէր գունդ մի գումարեալ ճեպով ի նահանգի անդ, փակէր զօրօք զանցս՝ ընդ որս էր մուտ թշնամւոյն, և զի երկիրն է գրեթէ անջրդի՝ ունէր զակունս աղբերաց, կանգնեալ առ նօքօք ամրոցս, և թաղէր ևս

վտակս ինչ ընդ կուտակօք աւազոյ։ Մինչ Կորբուղոն այսպէս ամրացուցանէր զԱսորիս՝ Մոնէս կամեցաւ յառաջ խաղացեալ փութոյ պնդութեամբ՝ կանխել զհամբաւ մերձենալոյ իւրոյ, բայց և այնպէս գտանէր զՏիգրան արդէն հմուտ իրացն և ի զգուշի։ Տիգրան մտեալ էր ի Տիգրանակերտ, քաղաք ամուր և՛ պահանորդօքն և՛ բարձրութեամբ պարսպացն։ Թող զայն՝ Նիկեփորոս գետ լայնանիստ պատէ զմիով մասամբ պատուարացն, և փոս լայն պաշտպանէ՝ զոր չէր ատակ պահել գետն։ Հռոմայեցի զինուորք էին ի բերդէն որ լին էր պաշարօք։ Ոմանք յարանց անտի որոց յանձն էր այն գործ՝ կարի իմն յառաջ մատուցեալ, յեղակարծումն պաշարեցան ի թշնամւոյն, և այս կորուստ տայր այլոցն սրտմտել մանաւանդ քան զանգիտել։ Մանաւանդ զի Պարթևք չէին յաջողակ ի պաշարել, զի ոչ ժտին յարձակել ի մօտոյ. արձակեն ըստ դիպաց իմն նետս, որ վրիպեցուցանեն զնոսա ի յուսոյ և ոչինչ զարհուրեցուցանեն զթշնամին, որ զատուցեալ իցէ պատուարաւ։ Ադիաբենացիք մատուցեալ ի սանդուղսն և ի մեքենայս՝ դիւրաւ ընկրկէին, և մերքն ելեալ արտաքս յանկարծօրէն՝ արարին զնոսա ցան և ցիր։ Կորբուղոն, թէպէտև գտեալ էր յաջողութիւն՝ խորհեցաւ իմաստութեամբ գնալ ընդ բախտին. ապա առաքէր առ Վաղարշ մեղադիր լինել նմա, զի յարձակեցան Պարթևք ի նահանգ իւր, պաշարեցին զայր թագաւոր դաշնակից և բարեկամ և զգունդս Հռոմայեցւոց։ Ազդ առնէր նմա բառնալ զպաշարումն, ապա թէ ոչ՝ ինքն ևս երթիցէ բանակել յերկրի իշխանութեան Պարթևաց։ Կասբերիոս հարիւրապետ, որում յանձն եղև տանել զպատգամն՝ գտանէր զթագաւորն ի Մծբին, երեսուն և եօթն մըղոնիւք հեռի ի Տիգրանակերտէ, և տայր նմա գոռոզութեամբ զպատգամն։ Վաղարշ ի բազմաց հետէ եդեալ էր ի մտի խուսափել ի զինուց Հռոմայեցւոց։ Այլուստ դարձեալ իրք առնն երթային և վատթարանային. պաշարումնն եղև առանց իրիք արդեանց, Տիգրանայ ոչ պակասէին ոչ զօրք և ոչ պաշար. յարձակումն Պարթևաց վանեցաւ յետս. լեգէոնաց մտեալ էր ի Հայս, և այլք որ էին զսահմանօքն Ասորւոց՝ սպասէին հրամանի մտանել յերկիր իշխանութեան նորա, և հեծելազօրն նորա էր ծիւրեալ առ ի չգոյէ արօտից, զի բազմութիւն մարախոյ կերեալ և սպառեալ էր զամենայն դեղ դալար յաշխարհին։ Արդ ծածկեալ զերկիւղն՝ մեղմական բանիւք տայր պատասխանի, թէ ունէր ի մտի յղել պատգամաւորս առ կայսր, խնդրել ի նմանէ զՀայս և պնդել զխաղաղութիւնն։ Ետ հրաման Մոնեսայ թողուլ զՏիգրանակերտ, և ինքն ևս մեկնէր ի բաց։ Բազում այնք էին, որ երկիւղի թագաւորին և սպառ-

նալեաց Կորբուղոնի ընծայեալ զմեկնելն Պարթևաց՝ գովութիւնս յաճախէին զԿորբուղոնէ։ Այլք համարէին գաղտ իմն միաբանութիւն, որով պատերազմն դադարեալ էր երկուստեք և Վաղարշայ կոչեալ յետս զզօրսն։ Քանզի, ասէին, առ իմէ կոչել զհռոմէական բանակն ի Տիգրանակերտէ, հէմ թողուլ լքանել ի խաղաղութեան՝ զոր պաշտպանեալն էր պատերազմաւ։ Միթէ առաւել հեշտեաւ էր անցուցեալ զձմեռն ի խարս անդ Կապադովկացւոց, ընդ տաղաւարօք կանգնելովք ճեպ ի ճեպոյ, քան ի մայրաքաղաքի թագաւորութեան զոր այն ինչ էր գրաւեալ։ Դադարումն իմն է այս, ասեն, պատերազմի, յանձն առեալ ի Վաղարշէ՝ զի զայլ ոք քան զԿորբուղոն ունիցի իւր ոսոխ, և ի Կորբուղոնէ՝ առ ի չվտանգելոյ զփառսն, գործուած այնչափ ամաց։ Ասացի արդարև, թէ զօրավարս այս խնդրեալ էր զայլ ոք առանձինն զօրավար վասն Հայոց, և ընթանայր իսկ համբաւ զմօտալուտ գալստենէն Կեսենայ Պետայ։

**7.** Գայր սա վաղվաղակի, և այսպէս բաժանէր զզօրն. չորրորդն և երկոտասաներորդ լեգէոնք, հանդերձ հինգերորդաւն որ կոչեցաւ ի Մեսիայ, որպէս և օգնական զօրն Պոնտոսի, Գաղատացւոց և Կապադովկացւոց՝ եդան ընդ հրամանատարութեամբ Պետոսի. երրորդն և վեցերորդ և տասներորդ և հին զօրականն Ասորւոց երկրին՝ մնացին առ Կորբուղոնի։ Այլ էր նոցա և հրաման՝ ի կարևոր հարկի կցել կամ բաժանել զզօրութիւն իւրեանց։ Բայց Կորբուղոն չառնոյր յանձն ունել ոսոխ, և Պետոս, որում երկրորդ կարգի պատիւն պարտէր լինել բաւական՝ նուազեցուցանէր զարութիւնս մեծի զօրավարին։ Ոչ դադարէր յասելոյ, թէ չիք նորա ո՛չ ի թշնամեաց անտի զոք սպանեալ և ոչ առեալ աւար. անուամբ լոկով, ասէ, առ զքաղաքս, և մինչ պարտն էր նմա օրէնս դնել, հարկս հարկանել պարտելոց և արկանել զնոսա ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց՝ ետ նոցա թագաւոր՝ որ ստուեր միայն է թագաւորի։

Զայնու ժամանակաւ հրեշտակք Վաղարշու, որպէս ասացի, առաքեալք առ կայսր՝ դարձան յետս առանց վճարելոյ ինչ, և Պարթևք սկսան յայտ յանդիման զպատերազմն։ Պետոս ոչ դանդաղէր ելանել ախոյեան. առեալ ընդ իւր լեգէոնս երկուս, զչորրորդն ընդ հրամանատարութեամբ Փունիսուղանեայ Վետտոնեայ, և զերկոտասաներորդն ընդ զօրավարութեամբ Կաղաւեայ Սաբինեայ՝ եմուտ ի Հայս ձախող գուշակութեամբք։ Ցանցանելն զԵփրատ ընդ կամուրջ՝ ձին որ կրէր զզարդս հիւպատոսութեանն՝ խրտուցեալ առանց յայտնի ինչ պատճառաց՝ ելանէր ըստ ձեռն և ապա

դառնայր այսրէն, և մինչ ամրացուցանէին զբանակատեղին՝ սպանդ մի ի սպանդից որ կայր մօտ առ աշխատողսն՝ խորտակեալ զվանդակսն որոց այն ինչ կիսով ի գլուխ ելեալ էր՝ զերծաւ ըստ պատուարսն արտաքս։ Նա և Նիզակք զօրականին արձակէին բոց· նշան այնու մանաւանդ արժանի մտադրութեան, զի Պարթևք նիզակօք սովոր են կռուել։ Պետոս արհամարհէր զնշանսն, և առանց ի գլուխ հանելոյ զամրութիւնսն և առանց պաշարս հայթայթելոյ՝ ձգէր տանէր զզօրսն անդր քան զՏաւրոս լեառն, որպէս զի, ասէր, առից զՏիգրանակերտ և աւերեցից զերկիրն, որում խնայեալ էր Կորբուղոնի։ Առնոյր արդարև բազում բերդեան և ստանայր փառս և զառ զաւար՝ եթէ էր զմին խնդրեալ չափով և միւսումն տարեալ փոյթ։ Յետ անցանելոյ զընդարձակ վայրօք, զոր չէր մարթ պա՛հել, և ապականելոյ զպաշարսն, զորս հանեալ էր ի թշնամւոյն, ստիպեալ ի մերձենալոյ ձմերայնւոյն՝ ած զզօրսն ի մի վայր։ Գրէր առ կայսրն թուղթ, ուր համարելով զպատերազմն վճարեալ՝ թաքուցանէր զիրացն դատարկութիւն ընդ ճոռոմութեամբ բանից։ Յայնչափ ժամանակի Կորբուղոն, որոյ չէր և ոչ մի վայրկեան թողեալ զափունս Եփրատայ՝ մօտագոյն ևս ի գետ անդր տանէր զամրութիւնսն, և զի մի՛ ասպատակք թշնամւոյն, որ յածէին ահեղ իմն պատրաստութեամբ ի հանդիպակաց կողման, արգել ինչ լինիցին նմա արկանել կամուրջ՝ յառաջ մատուցանէր ի գետ անդր նաւակս մեծամեծս, կապեալս ընդ միմեանս գերանօք, և ի վերայ նոցա տայր կանգնել աշտարակս։ Անդուստ վանէր զխուժադուժսն բաղխտրօքն և մեքենայիւք, ուստի քարինք և նիզակք թռուցեալ երթային բացէ ի բաց՝ յո չէր մարթ հասանել նետից։ Ապա կամուրջն ի գլուխ ելանէր, և զբլուրս միւսոյ կողման գետոյն ունէին օգնական գունդքն և ապա բանակ լեգէոնացն այնպէս արագ և այնպիսի մեծ զօրութեամբ՝ մինչև ի բաց կացեալ Պարթևաց յարձակելոյ յԱսորիս՝ դարձուցանէին զբովանդակ զօրութիւն իւրեանց ի վերայ Հայոց։

Պետոս առանց ունելոյ կասկած զմրրկէն որ մօտալուտ ի վերայ կայր՝ ունէր հեռի ի Պոնտոս զհինգերորդ լեգէոնն և տկարացուցեալ էր զայլսն, տուեալ նոցա ստէպ ստէպ պարապ, մինչ լուաւ թէ Վաղարշ դիմեալ գայր զօրու ծանու մեծաւ սպառնալեօք։ Կոչեաց Պետոս զերկոտասաներորդ լեգէոնն, և որով յաւելուլն կարծէր զիւր զօրութիւն՝ մատն եղև մանաւանդ տկարութեան իւրոյ։ Սակայն մարթ էր պահել զբանակատեղին և յապաղելով ի դերև հանել զխորհուրդ Պարթևին՝ եթէ Պետոսի գիտացեալ էր հաստատութեամբ գնալ ըստ խրատուն իւրոցն խորհրդականաց

և ըստ այլոցն։ Բայց այն ինչ արք յաջողակք ի պատերազմունս զօրացուցին զնա ընդդէմ վտանգին՝ նա առ ի չտալոյ կարծիս, թէ ունիցի պէտս օտար խրատուց՝ յանկարծ փոխէր զամենայն ի յառագոյն անդր։ Այսպէս թողոյր զկայանս զօրացն, պատճառեալ թէ ոչ քրամք և պատուարք, այլ զէնք և զօրականք տուան նմա ընդդէմ թշնամւոյն, և խաղացոյց յառաջ զլեգէոնսն՝ որպէս թէ ունիցի ճակատ տալ։ Ապա կորուսեալ հարիւրապետ մի և զոմանս ի զինուորացն, զորս առաքեալ էր գիտել զզօրութիւնն բարբարոսացն՝ աճապարէր դառնալ յետս։ Թուլութիւն Վաղարշու ի լինել նմա հեռամուտ՝ դարձոյց զնա յիւր անհանճար վստահութիւն, և կացոյց նա զերիս հազարս ընտիր ընտիր հետևակաց ի մօտագոյն կատար Տաւրոս լերին, արգելուլ զանցս թագաւորին։ Պանոնիացիքն, յորս էր զօրութիւն հեծելազօրուն՝ ճակատեցան ի միում կողման դաշտին, իսկ զկին և զորդիս իւր եդ նա յամրոցին որ Արշամաշատն կոչի, ընդ պահպանութեամբ գնդի միոջ։ Այսպէս ցրուեաց զզօրս իւր, որոց եթէ էր գումարեալ ի միում վայրի՝ լաւ ևս զդէմ ունէին անկարգ հրոսից թշնամւոյն։ Հազիւ իմն, ասեն, հաւանեցուցին զնա յայտ առնել Կորբուղոնի զիւր տագնապ, և սա ոչինչ փութայր հասանել նմա ի թիկունս, զի ի ծանրանալ վտանգին՝ յաճախեսցին նմա փառքն ի զերծուցանելն զնա։ Սակայն հրամայէր զի արք հազարք ի մէն միոջէ երից լեգէոնաց իւրոց, ութ հարիւր հեծեալ և նոյնչափ յօգնական զօրուէն կայցեն կազմ և պատրաստ ի մեկնել։ Իմացաւ Վաղարշ եթէ կալեալ էին անցք, աստ՝ հեծելովք, անդ՝ հետևակօքն Պետոսի, սակայն և այնպէս երթայր զհետ իւրոյ խորհրդոյն, և յաւելեալ զօրութիւն ի սպառնալիս անդր՝ զարհուրեցոյց զայրուձին և արար կոխան զհետևակսն։ Տարկուինիոս Կրեսկենդ եղև ձեռներէց ի պաշտպանել զաշտարակ մի, որ նմա յանձն էր ի պահ. ստէպ ելանէր արտաքս, առնէր ցիր և ցան՝ զորս միանգամ հուպն գային ի բարբարոսաց անտի, մինչև հուրք արձակեալք արտաքուստ պատէին զնա յամենայն կողմանց։ Որոց միանգամ չէր առեալ վէրս՝ զերծան ի բաց ընդ ճանապարհս վարուսս. իսկ վիրաւորք դառնային ի բանակ անդր, զքաջութենէ թագաւորին, զթուոյ և զգազանութենէ զօրաց նորա պատմելով, բազում ինչ առ ահին ստուարացուցեալ, զոր նոյնպէս երկիւղն տայր ընդունել դիւրաւ։ Զօրավարն իսկ ոչ ևս կռուէր ընդդէմ այսպիսի անյաջող ընթացից դիպաց։ Թողեալ էր նա զամենայն հոգս պատերազմին և աղաչեալ զԿորբուղոն երկրորդ պատգամաւորութեամբ՝ գալ հասանել ճեպով, ազատել զդրօշսն, զարծուիս, զանունն զրեթէ եղծեալ խախտեալ բանակին թշուառացելոյ, մինչ նոքա զոր

ինչ պարտիցինն առնել առնիցեն մինչև ի սպառել շնչոյ։ Կորբուլոն ոչինչ զահի հարեալ՝ թողոյր զմասն մի զօրաց իւրոց յԱսորիս պահել զամուրսն կանգնեալս առ Եփրատաւ, և կալեալ ճանապարհ զկարճագոյնն և որ մատուցանէր առատագոյն պաշար՝ անցանէր ընդ Կոմագենէ, ապա ընդ Կապադովկիա, և մտանէր ի Հայս։ Վարէր ընդ բանակին ոչ զկահ և զկազմած պատերազմին միայն ըստ սովորութեան, այլև բազմութիւն մեծ ուղտուց բարձելոց ցորեան, զի ընդ թշնամւոյն և զսովն ևս վանիցէ։ Առաջին փախստականն որում դիպեցաւ ի ճանապարհին՝ էր հարիւրապետն յառաջապահ զօրուն Պակտիոս, և յետ նորա բազումք ի զինուորաց։ Բորբանացն որովք ջանային նոքա անբասիր զիւրեանց փախուստն առնել՝ առնէր պատասխանի, տուեալ խրատ դառնալ անդրէն ի դրօշ անդր իւրեանց և ի գթութիւնն Պետոսի լինել ապաստան։ Ապա հանդէս առնէր լեգէոնաց իւրոց, մատուցանէր նոցա քաջալերս, տայր յիշել զառաջին արութիւնս իւրեանց և ցուցանէր նոր փառս։ Ոչ եթէ աւանք ինչ կամ քաղաքք դուզնաքեայք Հայոց էին, այլ բանակ հռոմէական, և ի բանակի անդ լեգէոնք երկու պաշարեալք, որ հանդերձեալ էին լինել մրցանակ աշխատութեան նոցա։ Եթէ իւրաքանչիւր զինուոր ընկալցի ի ձեռանէ զօրավարին մէն մի պսակ վասն միոյ միոյ ի Հռոմայեցւոց զորս փրկիցէ՝ քանի փառաւոր լինիցի օրն յորում պսակքն իցեն ըստ թուոյ Հռոմայեցւոցն եղելոց ի վտանգի։ Այսպիսի բանիւք և այլովք սոյնպիսեօք յեռանդն ածէր զզօրականն, յորոց ոմանք մորմոքէին իմն, մանաւանդ ածեալ զմըտաւ զտագնապ ազգականաց իւրեանց և եղբարց՝ երագէին զչուն զցայգ և զցերեկ առանց դադարելոյ։

Այլ Վաղարշ ոչինչ ընդհատ պնդէր զպաշարումնն, արհամարհեալ և՛ զճամբար լեգէոնացն և՛ զամրոցսն յորս պահէին զայնոսիկ, զորս տիքն առնեն անկարողս ի պատերազմ։ Նա մերձենայր խսկ յամրոցսն առաւել քան զսովորութիւնն Պարթևաց, յուսացեալ եթէ այս համարձակութիւն ձգիցէ զթշնամիսն ի ճակատ։ Այլ չգոյր հնար հանելոյ զնոսա ի վրանացն. զմարտկոցսն միայն՛ պաշտպանէին, ոմանք՝ առ հնազանդել զօրավարին, այլքն՝ առ վատութեան, պատճառեալ թէ Կորբուղոնի սպասիցեն, պատրաստք ի ցուցանել, եթէ յարձակումնն սաստկանայր՝ զօրինակս Նումանտիայ և Կաւդինեան կրճից։ Այլ չէին այնչափ ահագին Սամնիտացիք, ժողովուրդ Իտալիայ, և Կարքեդոնացիք, թէպէտև ոսոխք մերոյ տէրութեան։ Այո՛, այն փառաւոր հին ժամանակն ևս, ի մեծամեծ վտանգս՝ քան զամենայն ինչ մեծ զփրկութիւնն համարէր։ Յաղթեալ զօրավարին ի վատութենէ բանակին՝ գրէր առ Վաղարշ զա-

ռաջին թուղթն, յորում ոչ թէ աղերս ինչ արկանէր թագաւորին, այլ մեղադիր իմն լինէր մանաւանդ, թէ ընդէր Վաղարշ տայցէ ընդ մեզ մարտ պատերազմի վասն Հայոց աշխարհին, զոր ի վաղուց իսկ ունէին Հռոմայեցիքն և կամ տային զայն թագաւորի՝ զոր ընտրէր կայսր։ Յաւելոյր ևս, թէ խաղաղութիւնն էր երկուց կողմանց ևս շահեկան։ Վաղարշու, ասէր, չէր պատշաճ հայել յայժմն, զի եկեալ է ընդդէմ երկուց լեգէոնաց համօրէն ուժով իւրոյ տէրութեանն, այլ Հռոմայեցիք ունին զտիեզերս ի վարել զիւրեանց մարտն։ Վաղարշ առանց վիճելոյ տայր պատասխանի, թէ հարկ էր նմա կալ մնալ իւրոց եղբարցն Բակրոյ և Տրդատայ, և թէ էր նոցա լեալ ժամադիր մտանել ի խորհուրդ՝ ուր տայցեն վճիռ զՀայոց աշխարհէն, և զի դիքն արդարք տային զյաղթութիւնն արեան Արշակայ. որ ինչ վասն լեգէոնացն Հռոմոց պաշարելոց է՝ վճարեալ է։ Պետոս յղեաց պատգամ առ արքայն խնդրել խօսել ընդ նմա, և նա առաքէր զՎասակ զհրամանատար հեծելոցն։ Յայնժամ զօրավարն խօսեցաւ զՂուկուղղեայ և զՊոմպէէ և զգործոց կայսերաց եթէ ի պահել և եթէ ի տալ զՀայոց աշխարհն։ Վասակ պնդէր, թէ եթէ Հռոմայեցիք ունին զպատկեր այնր իշխանութեան՝ Պարթևք ունին զճշմարտութիւնն։ Յետ երկար մաքառմանց Մանաւազ Ադիաբենացի կոչեցաւ ի վաղիւն իբրև վկայ նոցին հաւանութեամբ։ Միաբանեցան զի բարձցի պաշարումն բանակին, զօրն Հռոմայեցւոց ելցէ յաշխարհէն Հայոց, ամրոցք և պաշարք տացին ի ձեռս Պարթևաց, և իբրև այս ամենայն վճարեսցի՝ տացի ժամանակ Վաղարշու առաքել հրեշտակս առ կայսր։ Այլ Պետոս արկ կամուրջ ի վերայ Արածանւոյ որ հոսէր առ բանակաւն, պատճառեալ եթէ պէտս ունիցի այնմ վասն անցուցանելոյ զզօրսն յայնկոյս. այլ Պարթևք եդեալ էին ի վերայ Հռոմայեցւոց զայս աշխատութիւն՝ ի հանդէս յաղթութեան իւրեանց. զի նոքա պաշտեցան կամրջաւն, մերքն կալան զհակառակ ճանապարհն։ Համբաւն յաւելոյր, թէ լեգէոնք կրեցին զամօթ անցանելոյ ընդ լծով և զայլ ևս թշնամանս, զորս ձախողանքն առնէին հաւատալի և որոց Պարթևք ևս տային առիթ, զի մտին ի բանակն՝ մինչչև ելեալ անտի Հռոմայեցւոց, և ի մեկնել սոցա կացեալ աստի և անտի ճանապարհին՝ առնուին և տանէին իբրև զիւրեանց՝ զգերիս և զգրաստս որ ի վաղուց էին ի ձեռս Հռոմոց։ Զհանդերձս իսկ և զզէնս անգամ հանէին ի նոցանէ, և զօրականն առ ահին չիշխէր հակառակել թէ գուցէ ստիպեսցին կռուել։ Վաղարշ ի հանդէս պարտութեանն Հռոմոց տայր զրահանս զրահանս կուտել զզէնս և զդիակունս մարդկանն սպանելոց, այլ չէառ յանձն յակն մերոց լեգէո-

նաց անկանել ի փախստեանն. զամբարտաւանութիւն իւր յագե-
ցուցեալ՝ ցանկայր պատուոյ համեստութեան։ Խիզախէր ընդդէմ
յորձանացն Արածանւոյ հեծեալ ի փիղ, և որ առ նովաւն երթային՝
անցին ի ձի, զի համբաւ տարածանէր, թէ կամուրջն խորտակելոց
էր ընդ բեռամբ առ ննդութեան շինողացն, այլ որ համարձակե-
ցանն անցանել՝ գիտացին թէ էր հաստատուն և չգոյր որոգայթ
թագուցեալ։ Յայտնի եղև սակայն, թէ պաշարեալքն ունէին մթե-
րեալ պաշարս այնչափ՝ մինչև հրձիգ առնել նոցա շտեմարանս ցո-
րենոյ. մինչ, ըստ պատմութեան Կորբուղոնի՝ Պարթևք առ ի չգոյէ
պաշարի, տեսեալ ևս զխար երիվարաց իւրեանց սպառեալս՝ հան-
դերձեալ էին թողուլ զպաշարումնն, և Կորբուղոնի առաջի կայր
ոչ աւելի քան երից աւուրց ճանապարհ՝ հասանել ի թիկունս պա-
շարելոցն։ Կորբուղոն յաւել ասել, թէ Պետոսի երդուեալ էր առ
ոտս նշանացն առաջի հրեշտակաց Վաղարշու, որ էին մօտ իբրև
վկայք՝ թէ ոչ ոք ի Հոռոմոց անտի մտցէ ի Հայս, մինչև պատ-
գամաւոր ոք կայսեր տացէ զրոյց, թէ հաճի կայսր ընդ խաղաղու-
թիւնն։ Եթէ ի ծանրացուցանել զամօթ նախատանացն Պետոսի հը-
նարեցաւ զայսոսիկ Կորբուղոն՝ են այլ անցք որոց ստուգութիւնն
առանց հակառակութեան է, այն իսկ, թէ Պետոս արար մղոնս
քառասուն ի միում աւուր, թողեալ զվիրաւորսն ի ճանապարհին,
և թէ այսպէս շտապաւ փախչել նորա աճագին զպարտութիւնն
երևեցուցանէր յաչս թշնամւոյն, որպէս թէ սպառսպուռ խորտա-
կեալ էր զօրն։ Կորբուղոն որ պատահեցաւ նոցա առ Եփրատաւ՝
ոչ կամեցաւ զի բանակ իւր ցուցցէ նոցա զիւրոց զինուցն պայծա-
ռութիւն և զնշանսն պատուոյ և փառաց, զի մի՛ առաւել իմն ի
կոր կործանեսցէ զնոսա։ Տրտմեալք և ի գութ խանդաղատեալք
ընդ կորանս ընկերաց իւրեանց տառապելոց՝ զինուորք Կորբուղոնի
ոչ կարացին ունել զարտասուս։ Հազիւ յարտասուս անդ իւրեանց
ածին զմտաւ տալ և առնուլ ողջոյն։ Անդ էր տեսանել ո՛չ մրցումն
քաջութեան, ո՛չ տենչ փառաց որ յաջողագոյն ժամանակի էին գործ.
գթութիւն միայն տիրէր, մանաւանդ ի խոնարհագոյն կարգս զօ-
րուն։ Զօրավարքն երկոքին խօսեցան ընդ միմեանս կարճառօտս։
Կորբուղոն վշտանայր իմն, զի ի զուր վաստակեցոյց զզօրականն,
մինչ պատերազմին մարթ էր առնուլ վախճան փախստեամբ Պար-
թևաց։ Պետոս տայր պատասխանի, թէ ոչ մին և ոչ միւսն կո-
րոյս ինչ. պարտ էր նոցա զարծուիս իւրեանց մատուցանել յառաջ
և ի միասին խաղալ ի վերայ աշխարհին Հայոց, տկարացելոյ գնա-
ցալովն Վաղարշու յետս։ Կորբուղոն ասէր, եթէ չունէր հրաման ի
կայսերէ, թէ վտանգ լեգէոնացն միայն ձգեաց զնա յիւրմէ նա-

հանդէն, և թէ լեալ անդէտ թէ զի՛նչ առնելոց էին Պարթևք՝ կամէր դառնալ անդրէն յԱսորիս, զի էր յերկբայս թէ հետևակ զօրն, խոնջեալ պարտասեալ յերկարութենէ ճանապարհին՝ գուցէ ոչ լինիցի բաւական զդէմ ունելոյ հեծելազօրուն (Պարթևաց), որ արթունն և զուարթուն էր և զորոյ արշաւանսն դիւրացուցանէր հարթութիւն լայնատարած դաշտացն։ Ապա Պետոս գնաց ձմերել ի Կապադովկիա։ Յետ սակաւ միոյ Վաղարշ առաքէր ստիպել զԿորբուղոն՝ կոչել յետս զպահակսն, զորս կացուցեալ էր նորա անդր քան զԵփրատ, զի գետն լինիցի, որպէս յառաջն՝ անջրպետ ի մէջ երկուց թագաւորութեանց։ Իսկ Կորբուղոն խնդրէր զի զօրք Պարթևաց ելցեն յաշխարհէն Հայոց, և հաճեցաւ թագաւորն։ Ամրութիւնք շինեալք ի Կորբուղոնէ յայնկոյս Եփրատայ՝ քանդեցան, և Հայք մնացին առանց տեառն։ Բայց ի Հռոմ կանգնէին յաղթանակք ի նշան պարտութեան Պարթևաց, և զԿապիտողեան լերամբն բարձրացան կամարք յաղթութեան ի հրամանէ ծերակուտին—մինչդեռ վախճան պատերազմին տակաւին չէր յայտ—և մատուցան յառաջ, առ ապրեցուցանելոյ զաչս, թէպէտ և իրք մերոցն ձախողէին, և ժողովուրդն իրազէտ էր անցից պատերազմին։ Առ լաւ ևս ծածկելոյ զլոյզս մտացն ընդ ճշմարտութիւն իրացն՝ Ներոն առնէր առաւել քան զայս. մասն մի ցորենոյն ի պէտս ժողովրդեան էր հնացեալ և փտեալ. ետ ամալ զայն ի Տիբեր գետ, իբրև վստահ յառատութիւն պաշարի. և թէպէտ նաւս իբրև երկերիւր ընկղմեալ էր մրրիկ ի նաւահանգստին, և զայլ ևս հարիւր, որ գային ընդ գետն ի վեր, ծախեաց հրդեհ՝ գին ցորենոյն չյաւելաւ։

Ի սկզբան գարնայնոյն հասանէին հրեշտակք Պարթևաց հրահանգօք Վաղարշու և թղթով, որոյ պատճէն էր օրինակ զայս։ «Լուեցից, ասէ, զխնդրոյն, զորմէ բազում անգամ եղեն բանք, այն է թէ ո՛ իցէ տէր աշխարհին Հայոց. քանզի դիք որ տեարքն են ազգաց հզօրագունից իսկ՝ ետուն Պարթևաց, ոչ առանց ամօթոյ Հռոմայեցւոց, զտէրութիւն երկրին այնորիկ։ Յառաջ քան զայս կալայ զՏիգրան փակեալ ի բերդի ուրեք, և ապա, մինչ կարողն էի ջախջախել զՊետոս և զլեգէոնս նորա՝ արձակեցի զնոսա անվնաս։ Զօրութիւն իմ յայտնի էր արդէն ըստ բաւականին, ցուցի արդ և զգթութիւն իմ։ Տրդատ առնոյր յանձն երթալ ի Հռոմ առնուլ զթագն՝ եթէ չէր արգելեալ ի նուիրական պարտուց քրմութեանն. երթիցէ սակայն առ դրօշս և առ պատկերս կայսեր և անդ առաջի լեգէոնաց արասցէ զնուակատիս իւրոյ թագաւորութեանն»։ Եւ զի այս թուղթ Վաղարշու էր հակառակ թղթոցն Պետոսի, որ կարծեցուցանէր տակաւին անստոյգ զելս պատերազմին՝

հարիւրապետն որ ընդ հրեշտակսն եկեալ էր՝ հարցաւ զիրաց աշխարհին Հայոց։ Հռոմայեցիք, ասէ այրն, ելին յաշխարհէն։ Յայնժամ յայտնի եղև, թէ ընդ հենգն իմն ելեալ Պարթևին՝ խնդրէր զոր ունէրն արդէն ի բռին։ Ապա խորհուրդ արարեալ Ներոնի ընդ աւագանւոյն Հռոմայ, թէ զո՛րն պարտ էր ընտրել, պատերազմե՞լ վտանգաւ, եթէ առնել խաղաղութիւն կորանօք՝ ոչինչ դանդաղեցան պատրաստել ի պատերազմ, և զի Կորբուղոն ի վաղուց զփորձ առեալ դիտէր և՛ զզօրականն և՛ զթշնամին՝ յանձն եղև նմա գործն, թէ գուցէ այլ ոք, տգէտ իբրև զՊետոս՝ածիցէ սխալ և ապաշաւ։ Հրեշտակքն արձակեցան՝ առանց լինելոյ ձեռնհաս իմիք, սակայն ընծայիւք, զի մնասցէ յոյս՝ թէ Տրդատ չխնդրէր ի զուր, եթէ իւրովի բերէր զաղաչանսն։ Վերակացութիւնն Ասորւոց յանձնեցաւ Կինկեայ, և զօրն պատերազմիկ՝ Կորբուղոնի։ Յաւելաւ յայն հնգետասաներորդ լեգէոնն, զոր ած առ նա ի Պանոնիայ Մարիոն Կեղսոս։ Գրեցաւ առ չորրորդապետս և առ թագաւորս, առ կուսակալս և առ տեղակալս, հուսկ ապա առ դատաւորս որ վերակացուքն էին մօտակայ գաւառաց՝ հնազանդ լինել հրամանաց Կորբուղոնի, որոյ իշխանութիւնն, այսպէս առաւելեալ՝ գրեթէ հաւասար էր այնմ զոր ընկալեալ էր Պոմպէի ի ժողովրդենէ անտի Հռոմայ ի պատերազմին ընդ հէնս։ Պետոս ի դարձին երկնչէր թէ պատուհասեսցի խստիւ. այլ կայսր փոխանակ պատժոց պատուհասից զծաղրն բաւական համարեալ՝ ասէ ցնա. «Փութամ ներել քեզ, վասն զի այր երկչոտ ես. գուցէ տռ անձկութեան անկանիցիս հիւանդ»։ Կորուստ քաջագունից ի զօրուէն և վհատութիւն այլոցն՝ առնէր զլեգէոնն չորրորդ և երկոտասաներորդ անկարողս ի պատերազմ։ Կորբուղոն փոխէր զնոսա յԱսորիս, և անտի տանէր ի Հայս զվեցերորդն և զերրորդ, գունդք առոյգք, կրթեալք ի վաստակս և ի յաջողութեան. յաւել ի նոսա և զհինգերորդ լեգէոնն, որոյ մնացեալ ի Պոնտոս՝ չեղև բնաւ հաղորդ ձախողանացն, որպէս և զհնգետասաներորդն, որ այն ինչ հասեալ էր, նշանակիրս ընտիրս ի Լիւրիկեցւոց և յԵգիպտոսէ, և որչափ ինչ ունէր յօգնական զօրուէն, հետևակ և հեծեալ, միով բանիւ՝ զզօրս թագաւորաց դաշնաւորաց գումարեալս ի մի վաշտ ի Մետիլինէ, ուր ունէր ի մտի անցանել ընդ Եփրատ։ Անդր ած ժողովեաց զզօրսն յետ զզոհսն մատուցանելոյ ըստ սովորութեան, և խոստացեալ ընդ պաշտպանութեամբ կայսեր պայծառ յաջողուածս, յուշ արարեալ նոցա զիւր արութիւնսն, և զչաջողութիւնսն ընծայեալ տխմարութեան Պետոսի։ Խօսեցաւ առ զօրականն այնպիսի իմն ճոխութեամբ, որ յանձին այնպիսւոյ զօրավարի ունի զտեղի ճարտարխօ-

սութեան։ Ցետոյ ապա կալաւ զճանապարհն զոր հորդեաց երբեմն Ղուկուղղոս, և եբաց զանցսն զորս փակեալ էր ժամանակն։

Ց. Իբրև եկին հրեշտակք ի Տրդատայ և ի Վաղարշէ խօսել խաղաղութիւն՝ Կորբուղոն փոխանակ մերժելոյ զնոսա, առաքէր ընդ նոսա հարիւրապետս, որ տանէին բանս հաշտութեան. «Չիք, ասէ, հարկ յանչափս մղել զպատերազմն։ Բազում դէպք յաջող եղեն Հռոմայեցւոցս. էր ինչ որ Պարթևացդ էր նպաստաւոր՝ ի խրատ ամբարտաւանութեան էր։ Յօգուտ Տրդատայ է այժմ ընդունել պարգև զթագաւորութիւնն՝ մինչչև ի սպառ քանդեալ աւերեալ երկրին. և Վաղարշ լաւ ևս ծառայեսցէ Պարթևաց՝ լեալ նիզակակից Հռոմայեցւոց քան թշնամութեամբ ընդ նոսա, և այս լինիցի վնասակար երկոցունց կողմանց։ Չեմ, ասէ, անտեղեակ ներքին երկպառակութեանց Պարթևաց, և թէ որպիսի ստահակ ազգի թագաւորիցէ արքայն։ Իսկ կայսր մեր, նմին հակառակ, ամենայն ուրեք վայելէ խորին խաղաղութիւն, և չիք նորա այլ պատերազմ բաց ի միջոյէ աստի յայսմանէ»։ Ցայս ամենայն խրատուց վերայ յաւելեալ Կորբուղոնի և արհաւիրս՝ խախտէ ի բնակութեանց իւրեանց զմեծամեծս Հայոց, որոց սկիզբն արարեալ էր ապստամբութեանն, և առնէ զամուրս նոցա հարթ յատակ։ Զդաշտս և զբարձունս, զզօրաւորս և զտկարս—զամենեսին միանգամայն լի առնէ ահիւ և տագնապաւ։ Անուն Կորբուղոնի չտայր երկիւղ բարբարոսաց իսկ, և ոչ ունէին նոքա զատելութիւնն զոր սովորութիւն է ունել առ այլ թշնամի. վասնորոյ և անսայլին իսկ խրատու նորա, և Վաղարշ որ չէր հակառակ հաշտութեան՝ խնդրեաց դադարեցուցանել զկռիւն ի բազումս ի գաւառաց իւրոց։ Եւ զի Տրդատ ցանկայր խօսել ընդ զօրավարին՝ եղև ժամադրութիւն գալ ընդ հուպ ի մի վայր, և տեղի ժամադրութեանն էր այն, ուր յառաջ քան զաւուրս ինչ պաշարեալ կայր լեգէոնօքն Պետոս։ Բարբարոսքն ընտրեցին զտեղին, զի յուշ առնէր այն նոցա զյաղթութիւնն, և Կորբուղոն ոչինչ ընդդիմացաւ, զի այն յիշատակութիւն, որ հակառակն էր սմին՝ յաւելոյր նմա փառս, զի և ընդ վատ անունն Պետոսի չէր ինչ նմա փոյթ, և զայս այնու մանաւանդ արար յայտ, զի զորդի Պետոսի որ տրիբունն էր զօրաց՝ առաքէր վաշտու միով փոքու թաղել զմնացորդս վերջնոյ պարտութեանն։ Ի ժամադրեալ աւուրն Տիբերիոս Աղեքսանդրոս ասպետ Հռոմայեցի, ի գլխաւորաց անտի որ տուեալ էին օգնական Կորբուղոնի ի պատերազմին, և Վիւիանոս Աննիոս փեսայ զօրավարին, որ չէր ի ծերակուտէն վասն տխեղծ տիոցն, այլ իբրև տեղակալ կարգեալ էր ի գլուխ հինգերորդ լեգէոնին՝ չոքան ի բանակ անդր Տրդատայ առնել պատիւ իշխա-

նին և բառնալ այնպիսի պատանդիւ զամենայն կասկած նենգութեան։ Իսկ գլխաւորքն երկուց կողմանց առին ընդ իւրեանս իւրաքանչիւր հեծեալս քսան։ Ի տեսանելն զԿորբուղոն՝ էջ նախ Թագաւորն յերիվարէն, ապա և Կորբուղոն արար զնոյն, և երկոքին մատուցեալ ի հետիոտս ետուն ձեռս միմեանց։ Հռոմայեցին գովեաց յայնժամ զմանուկ իշխանն, զի փոխանակ առնելոյ զանձն զահավէժ դարահոս ի պատահարս՝ գայր զհետ խրատու իմաստութեան։ Պարթևն խօսեցաւ բազում ինչ զազնուականութենէ տոհմին, ապա աւելի իմն համեստութեամբ յաւել, թէ կամէր երթալ ի Հռոմ և տանել առ կայսր նշան յաղթութեան՝ որ աննմանօթն էր ցայնժամ, այն է արշակունի աղաչաւոր, մինչ Պարթևաց չէր ի պարտութիւն մատնեալ։ Երկուստեք միաբանէին, զի Տրդատ դիցէ առաջի պատկերին կայսեր զարքունի ապարօշն և առնուցու զայն այսրէն ի ձեռանէ Ներոնի միայն։ Ապա գիրկս արկեալ միմեանց մեկնեցան։ Յետ աւուրց ինչ ընդ մէջ անցանելոյ, տողեալ կարգեցան մեծաշուք փառօք, անտի՝ հեծեալք Պարթևաց ի գունդս գունդս, զարդարեալ նշանօք իւրեանց աշխարհին, և աստի՝ լեգէոնք Հռոմայեցւոց, յորոց ի ճակատսն դրօշք արծուէնշանք և պատկերք դիցն, որոց տեսիլն տայր տեղւոյն նմանութիւն իմն մեհենի։ Ի միջոցին կանգնեալ կայր ատեան, աթոռ կայսերական ի վերայ, ուր եդեալ էր անդրի պատկեր Ներոնի։ Տրդատ, յետ ըստ սովորութեան յազելոյ զսպանդսն՝ մատեաւ յառաջ, հան զթագն ի գլխոյն և եդ առ ոտս անդրւոյն. տեսիլ իմն որ խանդաղատեցուցանէր զամենայն անձն և որոյ ազդումն լինէր այնչափ սաստիկ՝ որչափ յանդիման աչաց ունէին զկոտորած և զպաշարումն հռոմէական զօրուն։ Սակայն քանի փոխեալ էին գնացք բախտին։ Տրդատ երթայր երևել ազգաց, և զի՞նչ պակասէր առ ունելոյ զնա առ գերիս։ Կորբուղոն փոյթ առնէր ոչ փառաց միայն, այլ և ուշ ունէր քաղաքավարութեան, և ետ խնջոյս։ Թագաւորն առ ամենայն ինչ նոր որ կորզէր զաչս՝ խնդրէր մեկնութիւն։ «Ընդէ՞ր, ասէ, հարիւրապետ մի առնէ ազդ զսկիզբն առնլոյ հսկման. ուստի՞ գայցէ սովորութիւնն յառնելոյ ի ճաշոյ ի ձայն փողոյ, երթալոյ ջահիւ վառել զհուր ի վերայ բագնի կանգնելոյ առաջի նուիրացս։ Կորբուղոն բանիւք պատասխանւոյ որ մեծացուցանէին իմն զիրս՝ ելից զնա զարմանօք վասն վաղնջուց սովորութեանցն Հռոմոց։ Ի վաղիւն Տըրդատ խնդրէր զի յառաջ քան հարկանել բուռն զայնպիսւոյ երկայն ճանապարհէ՝ տացի նմա թոյլ երթալ տեսանել զեղբարս իւր և զմայրն։ Բայց զդուստր իւր թողոյր պատանդ թղթով աղաչանաց առ Ներոն։

Տրդատ երթայ և գտանէ զԲակուր ի Մարս և զՎաղարշ յԵկբատանս։ Թագաւորն չէր մոռացեալ զիւր եղբայր։ Նա մանաւանդ խնդրեալ իսկ էր ի ձեռն հրեշտակաց ի Կորբուղոնէ, զի մի՛ կերպարանս ինչ գերւոյ կրիցէ եղբայրն, մի՛ յանձնեսցէ զսուր իւր, տացի նմա մուտ համբուրելոյ զկուսակալս գաւառաց Հռոմայեցւոց, մի՛ սպասել առ դրան նոցա, և ի Հռոմ գնասցէն ընդ նմա պատուով իբրև ընդ հիւպատի։ Պատճառ այն էր, զի Վաղարշ սովորեալ յամբարտաւանութիւն արքունեաց արևելից՝ չէր հմուտ ոգւոյն Հռովմոց, առ որս բուն իսկ իշխանութիւնն է ինչ, ստուեր նորա՝ դոյզն ինչ»։

Ց. Աւելի համառօտ, բայց ոչինչ ընդհատ յստակ կը պատմէ Դիոն նոյն պատմութիւնը, զոր պատշաճ կը համարինք գնել հոս, թէպէտ Դիոն իբր մի դար հեռի կը գտնուի ժամանակաւ։ «Մինչ այսպէս զբաղեալ էր (Ներոն)՝ եկն հրեշտակ յաշխարհէն Հայոց և գափնի՝ վասն նորոյ յաղթութեան։ Կորբուղոն գումարեալ ի մի գունդ զլեգէոնոն ցրուեալս և հանեալ զնոսա ընդ հրահանգս, զորովք անփոյթ արարեալ էր նոցա՝ զարհուրեցոյց զՎաղարշ արքայ Պարթևաց և զՏրդատ թագաւոր Հայոց համբաւով միայն իւրոյ գալստեանն։ Հանգոյն առաջնոց Հռովմոց՝ Կորբուղոն էր անուանի ոչ ազնուականութեամբ միայն իւրոյ տոհմին, ուժով մարմնոյն և իմաստութեամբ ոգւոյն, այլև էր արդար և հաւատարիմ առ այլս, եթէ առ իւրսն և եթէ առ թշնամիսն։ Սմին իրի և Ներոն սահմանէր զնա առաքել փոխանակ իւր ի պատերազմ, և տայր ի ձեռս նորա բազմութիւն զօրաց, որպիսի չէր նորա տուեալ այլում ումեք, քանզի հաւանեալ էր, եթէ Կորբուղոն էր ձեռնհաս նուաճել զբարբարոսսն և չգրգռել զայլս ի նախանձ։ Ոչ վրիպեցաւ Ներոն յակնկալութենէ իւրմէ, ո՛չ ի միումն և ոչ ի միւսում. Կորբուղոն ոչ այլով իւիք եղև անհաճոյ Հռոմայեցւոց՝ բայց կալովն միայն հաւատարիմ առ Ներոն, քանզի Հռոմայեցիք այնպէս իմն ցանկային ունել զնա կայսր փոխանակ Ներոնի՝ զի զհաւատարմութիւն նորա միայն հարկանէին նմա յերեսս։

Կորբուղոն յետ տիրելոյ Արտաշատու առանց պատերազմի՝ արար զայն հարթյատակ։ Ապա խաղայր ի վերայ Տիգրանակերտի, խնայելով որոց միանգամ հնազանդէին նմա և սատակելով զորս դիմադարձն լինէին։ Քաղաքն եղև անձնատուր, և Կորբուղոն կատարէր և այլ ևս բազում գործս արութեան մեծաւ շքով, որոց կատարածն լինէր ածել զՎաղարշ, որչափ և ահաւոր էր նա՝ ի հաւան ըստ արժանի մեծութեանն Հռոմայեցւոց։ Իմացեալ Վաղարշու, եթէ Ներոն բաժանեալ էր, որպէս զայլ աշխարհս՝ նոյն-

պէս և զՀայոց աշխարհն, և թէ Տիգրան աւերէր զԱդիաբէն՝ պատրաստէր գալ անձամբ ի վերայ Կորբուղոնի, և առաքեաց ի Հայս զՄանաւազ արքայ Ադիաբենացւոց և զՄոնեսէս Պարթև։ Սոքա պաշարէին զՏիգրան ի Տիգրանակերտ։ Այլ զի պաշարմամբն այնուիկ փոխանակ վնաս ինչ գործելոյ նմա յամենայն խառնուրդս ճակատուց մղէին յետս ի նմանէ և ի Հռոմայեցւոց որ ընդ նմա էին, և զի գարձեալ Կորբուղոն հսկէր մեծաւ զգուշութեամբ ի վերայ Ասորւոց՝ Վաղարշ ի բաց եկաց ի խորհրդոյն և դադարեցաւ ի պատրաստութեանցն։ Առաքեալ դեսպանս առ Կորբուղոն՝ հաւանեցոյց զնա տալ միջոց պատերազմին, յանձն առեալ ընդ այնր արձակել դեսպան առ կայսր և բարձեալ զպաշարումն հանել զզօրս իւր յաշխարհէն Հայոց։ Ներոն ոչ առնէր նմա պատասխանի և առաքէր զԿեսեննիոս Պետոս ի Կապադովկիա արգելուլ յապըստամբելոյ զՀայս։

Վաղարշու տուեալ ճակատ առ Տիգրանակերտիւ՝ վանէր զՊետոս, որ գայր ի Թիկունս քաղաքին. ապա զհետ մտեալ նորա ի փախստեանն՝ խորտակէր զպահանորդսն թողեալ ի թշնամւոյն ի Տաւրոս, և զնա ինքն արկ յարգել ուրեք մօտ յԱրածանի։ Սակայն գառնալոց էր յետս ոչինչ վճարեալ—զի չէր մարթ նմա հպել ի պատնէշսն առ ի չգոյէ սպառազէն զօրաց, և հասեալ անգր առանց պաշարի՝ չգտանէր ռոճիկ բաւական ըստ Թուոյ բազմութեան զօրուն—եթէ Պետոսի, երկուցեալ ի նետից անտի Պարթևին որ հասանէին մինչև ի բանակետղ անդր, և յայրուձիոյն որ ամենայն ուստեք երևէր՝ չէր լեալ բանագնաց, դաշինս կռեալ և երդմամբ խոստացեալ ելանել յաշխարհէն Հայոց, զոր Ներոն տալոց էր Տրդատայ։ Հաճեալ ընդ այս Պարթևին և ածեալ զմտաւ, թէ մարթ էր դիւրաւ լինել տէր երկրին և շահել զՀռոմայեցիս, իբր այն թէ երախտիս առնէր նոցա, լուեալ ևս զմերձենալ Կորբուղոնի, զոր Պետոս կոչեալ էր յօգնութիւն իւր՝ Թողոյր պաշարելոցն երթալ ազատ, յառաջագոյն խնդրեալ ի նոցանէ արկանել նմա կամուրջ ի վերայ Արածանւոյ, ոչ զի պէտս ինչ ունէր կամրջին, զի անցեալ էր նա ընդ հուն մի, այլ կամէր ցուցանել նոցա եթէ էր հզօրագոյն քան զնոսա։ Ուստի փոխանակ անցուցանելոյ զզօրս իւր ընդ կամուրջն՝ ինքն անց ի լիւղ հեծեալ ի փիղ և ետ անցանել զօրուն այնպէս՝ որպէս անցեալ էր նոցա յառաջագոյն։

Այն ինչ հաստատեալ էր դաշանցն, հասեալ Կորբուղոն անհնարին արագութեամբ յափունս Եփրատայ՝ առնոյր անդէն զաեղի։ Իբրև բանակքն երկոքեան (Կորբուղոնին և Պետոսի) եկին առ միմեանս՝ անդ էր տեսանել զմեծ խտիրն զօրաց և զօրավարաց եր-

կուստեք. մի կողմն էր ուրախ և պարծէր ընդ արագութիւն իւրեանց. միւս կողմն տրտմեալք և ամօթով վասն դաշանցն կռելոց։ Իսկ Վաղարշ առաքէր զՄոնեսէս խնդրել ի Կորբուղոնէ՝ թողուլ զամրութիւնսն որ ի Միջագետս։ Պատգամաւորք ստէպ երթային և գային ընդ կամուրջն Եփրատայ, զոր ընդ մէջ հատեալ էր նոցա։ Կորբուղոն խոստանայր ելանել ի Միջագետաց՝ եթէ Պարթևք թողուին զՀայս, և պայմանքն կատարեցան երկուստեք, մինչև Ներոն լեալ իրազեկ եղելոցն և լուեալ զհրեշտակսն առաքեալս ի Վաղարշէ՝ առնէր պատասխանի եթէ առնոյր յանձն տալ զՀայս Տրդատայ՝ եթէ և նա յանձն առնուցու երթալ ի Հռոմ։ Ապա յետ հանելոյ զՊետոս ի զօրավարութենէն և ցրուելոյ զզօրսն որ ընդ նմա՝ միւսանգամ յանձն առնէր Կորբուղոնի զպատերազմն ընդդէմ բարբարոսաց։ Ունէր ի մտի անձամբ երթալ ի կռիւն, այլ անկեալ յերիվարէն ի ժամու զոհիցն՝ ոչ իշխէր երթալ, և մնաց ի Հռոմ։ Կորբուղոն յաչս ամենեցուն պատրաստէր ի պատերազմ ընդդէմ Վաղարշու, նա՛ յղէր իսկ առ նա հարիւրապետ մի՝ ստիպեալ զնա հանել զզօրս իւր յերկրէն, այլ ի ծածուկ տայր նմա խրատ առաքել զեղբայր իւր ի Հռոմ, և հաւանեցոյց զնա յայն, զի Կորբուղոն թուէր ունել զօրս առաւել քան զնորայսն։ Կորբուղոն և Տրդատ տեսին զմիմեանս ի տեղւոջ ուրեք Հռանդէա անուն։ Ոչ ի խորհել միայն եկին նոքա ի մի վայր. կանգնեցաւ բեմ բարձր, յորոյ վերայ եդաւ կէս անդրի Ներոնի. Տրդատ դէմ յանդիման մեծի իրիք բազմութեան Հայոց, Պարթևաց և Հոռոմոց մատեաւ յառաջ ի պատկեր անդր կայսերն և երկիր եպագ նմա. ապա յետ մատուցանելոյ զոհս և աղերս պաղատանաց՝ եհան զթագն ի գլխոյն և եդ ի վերայ պատկերի կայսեր։ Մանաւազ և Վաղարշ եկին տեսանել զԿորբուղոն և ետուն նմա պատանդս։ Ներոն վասն իրացս այսոցիկ անուանեցաւ ինքնակալ բազում անգամ» (Դիոն ԿԲ. 19—23)։

**10**. Թէպէտ, ինչպէս յայտնի է այս պատմութենէն, Հռոմայեցիք յաղթուած էին մանաւանդ քան յաղթող, և Տրդատ երևելոց էր ի Հռոմ, ըստ պայմանին Վաղարշու, պատուով ըստ օրինի հիւպատոսաց՝ Ներոն խորամանկութեամբ ի պատիւ իւր դարձուց ընդունելութիւնը, որպէս ասէ Սուետոն, որոյ բանքն ի ստորև։ Արդարև լատին պատմիչք ժամանակակիցք (Սուետոն) և մերձաւորք ժամանակաւ (Եւտրոպիոս) կ'ընդունին, թէ Հռոմայեցիք յաղթուեցան այն պատերազմին մէջ.—«Յարևելս ամօթալի պարտութիւն ի Հայս՝ անցոյց զլեգէոնս մեր ընդ լծով» (Սուետ. ի Ներ. ԼԹ.)։ «Պարթևք հանին ի նմանէ (ի Ներոնէ) զՀայս և ետուն անցանել լեգէոնաց մերոց ընդ լծով» (Եւտր. Է. 14)։ Տրդատ անկաւ

յուղի երեք հազար հայ և պարթև հեծելովք և բազմութեամբ մոգուց, քանզի և ինքն իսկ ունէր հանդերձ թագաւորութեամբն՝ պատիւ մոգպետութեան։ Ճանապարհորդութիւնն տևեց ինն ամիս. ոչ սակաւ Հռոմայեցիք կ'երթային ընդ նմա իբրև պատուադիր, և ծախքն էին յօրքունուստ հրամանաւ Ներոնի։ Երբ Տրդատ հասաւ յԻտալիա՝ ղրկուեցան դեսպակք, քանզի մինչև հոն եկած էր թագաւորն ի նիւս երիվարի ոսկի սաղաւարտով։ Ներոն էր ի Նէապոլիս՝ երբ յանդիման եղև նմա Տրդատէս, և յետ մըրցութեան խաղուց որ եղան ի պատիւ նորա՝ եկան թագաւորն և կայսրն ի Հռոմ, ուր լինելոց էր թագադրութիւնն։ Բոլոր քաղաքն, որպէս ասէ Տակիտոս՝ դիմաւորեց զՏրդատ, որ էր արդարև վայելուչ դիմօք և հասակաւ։ Հրապարակն ուր պիտի կատարուէր հանդէսն՝ զարդարուած էր մեծագին օթոցիւք. ժողովուրդն սպիտակահանդերձ ի միջոցին, շուրջ պատեալ ի զօրուէն, և տանիք տանց խճողեալ էին բազմութեամբ հանդիսատեսաց։ Ներոն կայսերական պատմուճանաւ, բակ առեալ ի ծերակուտէն և թիկնապահ զօրուէն՝ նստաւ յաթոռ իւր բարձր բեմի վերայ, և Տրդատ ելլելով աստիճաններէն վեր էջ ի ծունր առաջի կայսեր, որ վերցունելով զնա աջոյ ձեռամբն՝ համբուրեց և նստոյց յայլ աթոռ խոնարհագոյն քան զիւրն։ Ապա դրաւ Հայոց թագաւորական թագն ի գըլուխն Տրդատայ ի ձայն ցնծութեան այն ահեղ բազմութեան։ Յետոյ եղան խաղք ի հրամանէ ծերակուտին Պոմպէի թատրոնը, որ զարդարեալ էր ոսկւով և ծիրանեօք ի պատիւ թագաւորին որ կը նստէր յաջմէ կայսեր, և ի վախճանին եղաւ հացկերոյթ մեծ։ Տըրդատ յետ այնորիկ յոյն և հռոմայեցի ճարտարօք կը դառնայ ի Հայս, և կը շինուի Արտաշատ։

Տրդատայ Հռոմ երթալուն պատմութիւնն ունի Դիոն այսպէս. «Տրդատ եկն ի Հռոմ, ածեալ ընդ իւր ոչ միայն զորդիս իւր, այլև զորդիս Վաղարշու, Բակրոյ և Մանաւազայ։ Զու նոցա ընդ ամենայն երկիրն սկսեալ յԵփրատայ՝ լինէր իբրև յաղթական չու։ Տըրդատ էր ի ծաղկի հասակին, գեղեցիկ և բարենշան ազնուականութեամբ տոհմին և մտօքն։ Գայր արքունական շքով, երեք հազար պարթև հեծելովք, թող զբազմութիւնն Հռոմայեցւոց որ գնային զհետ նորա։ Քաղաքք ընդունէին մեծաւ հանդերձանօք զնա և զորս ընդ նմայն էին և ազգք և ազինք՝ ուրախութեան աղաղակաւ։ Ամենայն պէտք նոցա տուան ձրի, մինչև ծախուցն լինել հասարակաց գանձուն երկերիւր բիւրոց դահեկանաց (2,000,000 տրաքմի) յաւուրն։ Այս տևեաց զամիսս ինն ճանապարհորդութեանն։ Տրդատ երթայր հեծեալ ի ձի մինչև յԻտալիա. աւընթեր

նմա երթայր կին նորա նոյնպէս ի նիւս երիվարի, սաղաւարտ ոսկի ի գլուխն ի նմանութիւն ապարօշի, առ ի ծածկելոյ զդէմսն ըստ սովորութեան երկրին։ ՅԻտալիա ճանապարհորդութիւնն լինէր կառօք զորս առաքեալ էր նմա Ներոն, և չոքաւ նա գտանել զկայսրն ի Նէապոլիս։ Այլ իբրև մօտ լինէր առ նա՝ չառ յանձն, հակառակ հրամանին զոր ընկալաւ՝ ի բաց գնել զվաղակաւորն. շատ և բաւական համարեցաւ մխել զայն ի պատեանն, թէպէտ և զծունկն իւր եդ ի գետնի և ձեռս ի կուրծս՝ կոչեաց զկայսրն Տէր և երկիր եպագ նմա։

Ներոն զարմացեալ ընդ այս գործ Տրդատայ՝ ընկալաւ զնա պատուով և ետ ի պատիւ նորա սուսերամարտից կռիւ ի Պուտէոլոս։ Պատրոբիոս ազատացեալն կայսեր ունէր զվերակացութիւն խաղուցն, եցոյց այնչափ մեծութիւն և ծախեաց այնչափ, զի մի օր ողջոյն ոչ այլ ինչ էր տեսանել ի վերայ թատերն՝ բայց միայն արս և կանայս և մանկունս եթովպացիս։ Տրդատ ի բարձուէ անտի գահուն նետաձիգ ի գազանսն լինէր, և եթէ պարտ իցէ հաւատալ՝ ի մի հարուած նետից հար և սպան երկուս ցուլս միանգամայն։

Ներոն յետ այսորիկ տանէր զնա ի Հռոմ և դնէր զթագն ի գլուխ նորա։ Քաղաքն ողջոյն էր զարդարեալ ճրագօք և պսակօք. ամենայն ուրեք էր տեսանել խուռն բազմութիւն մարդկան, հրապարակն մանաւանդ լի էր ամբոխիւ, իսկ զմիջոցն ունէր ժողովուրդն կարգ կարգ, սպիտակ հանդերձիւք և դափնեօք. զմնացեալ մասն ունէր զօրն վառեալ ի զէն և ի զարդ, յորոց շողիւնք արձակէին իբրև զփայլատակունս։ Տանիք անգամ շինուածոց ծածկեալ էին բազմութեամբ մարդկան, որ ելեալ էին անդր ի զնին տեսլեանն։ Այս պատրաստութիւնք լինէին ի գիշերի, և Ներոն ի ծագել այգուն մտանէր ի հրապարակն, զգեցեալ պատմուճան յաղթութեան, հանդերձ ծերակուտիւն և թիկնապահօք. ել նա ի բեմ անդր և նստաւ յաթոռն կայսերական։ Յետ այնորիկ Տրդատէս և իւրքն անցան ի մէջ, բակ առեալ ի զինուորաց, և հասեալ առաջի բեմին՝ երկիր պագին կայսեր առաջին անգամ։

Ձայն մեծի աղաղակին որ բարձաւ յայնժամ՝ զարմացոյց զՏրդատ այնպէս՝ մինչև կալ նմա վայր մի անբարբառ իբրև զմեռեալ. այլ իբրև դարձաւ լռութիւնն ի ձայն քարոզին՝ եկն ի միտս իւր, և բուռն առնելով գոռոզութեանն՝ խոնարհեցաւ հարկին և իւրոյ շահուն, և չեղև նմա փոյթ, յուսով այնր զոր ընդունելոց էր՝ խոնարհեցուցանելն զանձն բանիւք, և խօսեցաւ օրինակ զայս. «Տէր, եմ ես զաւակ Արշակայ, եղբայր Վաղարշու և Բակրոյ, և քո ծա-

ւայ։ Եկի առ քեզ որ աստուած իմ ես՝ երկիր պագանել քեզ իբրև Միհր Աստուծոյ. այն լիցի իմ բախտ՝ զոր մանեսցեն ինձ քո, զի վասն իմ ես դու Պարկայն և Բախտ»։ Ներոն ետ նմա պատասխանի. «Իմաստութեամբ արարեր գալ այսր տեսանել զիս անձամբ. զի զթագաւորութիւնն, զոր ոչ հայր քո եթող քեզ, և ոչ եղբարք քո որ ետուն զայն քեզ, կարացին պահել՝ զայն ես տամ քեզ. առնեմ զքեզ թագաւոր Հայոց, առ ուսուցանելոյ և՛ քեզ և՛ նոցա, զի ունիմ ես իշխանութիւն առնուլ զթագաւորութիւնս և տալ»։ Յետ խօսելոյ այսպէս՝ հրամայեաց նմա ելանել ընդ ուղին զոր թողեալ էր վասն այսօրիկ առաջի բեմին, և իբրև նստաւ Տրդատ առ ոտս Ներոնի՝ Ներոն եդ զթագն ի գլուխ նորա. յայնժամ լսելի եղեն բիւր ձայնք ազգի ազգիք։

Եղեն և այս խաղք թատերականք հրամանաւ ծերակուտին։ Թատրոնն, ոչ տեղի տեսլեանն միայն այլև վայրն գլխովին՝ էր ոսկեզօծ, և ամենայն կարասին որ ի նմա՝ էր ոսկիապատ, ուստի և օրն այն կոչեցաւ օր ոսկւոյ։ Վարագոյրք ձգեալք յօդս առ պատսպարելոյ ի տապոյ արեգականն՝ էին ի ծիրանւոյ. ի միջոցին էր Ներոն ոսկեհուռն հանդերձիւք. վարէր կառս իմն, և շուրջ զնովաւ համակ փայլէին աստեղք յոսկւոյ։ Դարձեալ եղև, որպէս յայտ է՝ սեղան մեծածախ։ Ներոն եհար քնար և վարեաց կառս, զգեցեալ հանդերձ կանաչ և խոյր կառավարաց ի գլուխն։ Տրդատ անարժան զտեսիլն համարեցաւ, և ի գովելն զԿորբուղոն՝ պարսաւէր զնա միայն՝ զի այնպիսի տեառն կայր ի ծառայութեան։ Նաև ի նմին իսկ ի կայսերէ ոչ ծածկեաց զխորհուրդ մտացն, այլ ասէ ցնա յաւուր միում. «Տէր, սքանչելի ծառայ ունիս ի Կորբուղոն»։ Ներոն ոչ իմացաւ զմիտս բանին. յայլ ամենայն ժամանակս՝ Տրդատ խօսէր առ Ներոն բանս համակ ողոքանաց և հնազանդութեան. վասնորոյ և ընկալաւ իսկ, որպէս ասեն, բազում պարգևս, որոց գին հասանէր ի հինգ հազար բիւրս դահեկանաց, և հրաման շինելոյ զԱրտաշատ, վասնորոյ և տարաւ ի Հռոմայ բազմութիւն գործաւորաց, յորոց զոմանս ետ կայսր, զայլս վարձէր թագաւորն գնոց արծաթոյ։ Բայց Կորբուղոն ոչ ետ թոյլ ամենեցուն միանգամայն երթալ ի Հայս, այլ այնոցիկ միայն՝ զորս շնորհեաց կայսր. և այս մանաւանդ ետ Տրդատայ զարմանալ ևս առաւել ընդ մին և գովել զմիւսն աւելի» (Դիոն. ԿԳ. 1—7)։

Ի յիշատակ այս նշանաւոր դիպաց կան դահեկանք. նախ 58 ամէն, որ է ամ առման Արտաշատու՝ կայ դահեկան Ներոնի «արծաթի (quinarius), յորոյ ի միւումն կողման ի միջի է գիր՝ «Հաղթեաստան» (Armeniac, այսինքն՝ Armeniaca victoria, կամ Ar-

menia capta), *և պատկեր՝ Յաղթութիւն զի ընթանայ պսակ յաջու ձեռին, և կամ պսակ և արմաւենի ևս. իսկ յայլում, դարձեալ ի նոյնպիսի գահեկանի՝ Յաղթութիւն զի գրէ ի վերայ վահանի»* (*Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ.* 114)*։ Նոյնպէս յամէն* 61, 62, 63 *«դահեկանք ոսկիք և արծաթիք Ներոնի, յորոյ ի միում կողմանն է գլուխ Ներոնի մերկ, և ի միւսումն՝ երբեմն պսակ ի կաղնւոյ, երբեմն Դեմետրէ (դիք արմտեաց) կայ կանգուն՝ հասկս յաջում ձեռին և ջահ ի ձախումն. և դարձեալ՝ զինուոր մի կանգուն, յաջու ձեռին վաղակաւոր, և ի ձախումն՝ նիզակ, և աջու ոտամբն կոխէ զկառափն մարդոյ կամ զսաղաւարտ մի»* (*Անդ.* 115, *ծան.* 3)*։ Դարձեալ միւս ևս «դահեկան Ներոնի պղնձի, յորոյ ի միում կողմանն է գլուխ Ներոնի պսակաւոր ի դափնւոյ և վահան Եգիդ զլանջօք, և ի միւսումն կողման տաճար Յանեայ դրովք փակելովք և գիր շուրջանակի՝* Paci p. r. terra mariq. parta Ianum clusit. *և կամ Հռոմ ի կերպարանս կնոջ նստեալ, նիզակ յաջումն և վահան ի ձախում»* (*Անդ,* 123, *ծան.* 2)*։*

*Զընդունելութենէն Տրդատայ ի Ներոնէ խօսի Տակիտոս այսչափ ինչ համառօտիւ. «Վասն երկուց դատապարտութեանց (Սորանոսի և Ակրատոսի) ընտրեցաւ ժամանակն՝ յորում Տրդատ գայր ընդունել զթագն Հայոց». և սակաւ մի յետոյ. «Ի ժամուն յորում բնակիչք ամենայն խուժէին արտաքս ի Հռոմայ երթալ ընդ առաջ կայսեր և տեսանել զթագաւորն՝ Թրասէաս ընկալաւ հրաման չմերձենալ»։ Սուետոն ընդարձակ ևս կը պատմէ. «Մարթ է թուել յիբաւի ի մէջ տեսլեանցն զորս ետ (Ներոն)՝ զմուտն Տրդատայ ի Հռոմ։ Թագաւորս այս Հայոց, ձգեալ ի մեծամեծ խոստմանց նորա՝ պարտէր երևել առաջի ժողովրդեան յաւուրն սահմանելոյ հրովարտակաւ, այլ անհարթութիւն օդոյն եղև արգել։ Ներոն եցոյց զնա այնպիսի իմն օրինակաւ որ շահաւորագոյնն էր նմա։ Տողէր շուրջ զհրապարակաւն գունդս վառեալս զինու զարդու, և ինքն նստէր ի բեմին հրապարակախօսաց յաթոռն կայսերական ի հանդերձ յաղթականի, շուրջ պատեալ ի զինուորական նշանացն և ի հռոմէական արծուեաց։ Տրդատ ելանէր ընդ աստիճանսն և անկանէր ի գուճս։ Ներոն կանգնէր զնա և համբուրէր։ Ապա ըստ նորա աղաչանացն՝ հանէր զխոյրն և դնէր զթագն ի գլուխ նորա, մինչ ոմն ի հին պրետորաց թարգմանէր բազմութեանն զբանս աղաչաւորին։ Անդուստ ապա ածէր զնա (Ներոն) ի թատրոնն, և յետ ընդունելոյ ի նմանէ այլ ևս մեծարանս հպատակութեան՝ նստոյց զնա ընդ աջմէ իւրմէ։ Ողջունեալ ինքնակալ յետ այնորիկ՝ տարաւ զիւր պըսակն ի դափնւոյ ի Կապիտողիոն անդր և փակեաց զմեհեանն Յա-*

նոսի, որպէս թէ չգոյր այլ ևս պատերազմ ի վճարել» (Սուետ. ի Ներոն, ԺԳ)։

Պլինիոս ևս կը յիշէ երիցս զգալուստն և զընդունելութիւն Տրդատայ ի Ներոնէ զայս օրինակ. «Տրդատէս մոգ եկեալ էր գտանել զնա (զՆերոն) ի Հռոմ, բերեալ յանձին իւրում զձաղանս Հայոց աշխարհին, և վասն այսորիկ իսկ կոխէր զնահանգսն ընդ որս անցանէր։ Զէր կամեցեալ երթալ ընդ ծով, զի մոգքն արգելեալ համարին թքանել ի ծով և աւելորդօք ինչ կարևորօք մարդկութեան զտարրն զայն պղծել։ Ունէր ընդ իւր մոգս, առնէր զՆերոն միջամուխ ի խնջոյս մոգականս. սակայն կայսրն որ տայր նմա թագաւորութիւն՝ չկարէր ընդունել ի նմանէ զարուեստ մոգութեան» (Պլին. Լ. 6)։ Այլուր (ԼԳ. 6) ասէ. «Ներոն որ զնորա կնի գայր՝ համակէր ոսկւով զթէատրոնն Պոմպէի վասն միոյ աւուր միայն, յորում եցոյց զայն Տրդատայ արքայի Հայոց»։ Եւ այլուր դարձեալ. «Տրդատէս թողաւ ազատ ի Ներոնէ, տուեալ ի գին երեքտասան հազարս հազարաց սեստերտից»։

Ի բովանդակ պատմութեան Հռոմայեցւոց չկայ ամենևին օրինակ թագաւորի տուելոյ այսպիսի և այսչափ փառաւորութեամբ, մինչև անձամբ պսակել կայսեր ի մայրաքաղաքի անդ ի Հռոմ։ Մեր ազգային պատմութիւնն որ քրիստոնէական է, կամ մանաւանդ Խորենացին՝ չունին զնշմարանս անգամ այս պատմութեան, կամ՝ վասն զի անծանօթ մնաց յիշատակն, կամ թերևս՝ վասն զի անարժան համարեցաւ քրիստոնէական նախանձն Հայոց Ներոնիւ կատարուած դիպուած մի, թէև փառաւոր՝ արձանագրեալ տեսնել իւր պատմական յիշատակարաններուն մէջ, հաւանականագոյն ևս՝ Խորենացւոյն, որ մի միայն հայ պատմիչն է հեթանոսութեան ժամանակին, տգիտութիւնն մեր պատմութեան արտաքին աղբիւրներուն։ Զիարդ և իցէ՝ եթէ քրիստոնեայ հայն չգիտցաւ կամ չկամեցաւ գիտել՝ հեթանոս վիպասանութիւնն մեր քաջ գիտէր, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։

**11.** Թէ ինչպէս վարուեցաւ Տրդատ յետ մահուան Ներոնի ներքին յուզմանց ժամանակ, մինչ Վինդէքս, Գաղբա, Ոթոն և Վիտեղիոս (68—69) կը ճգնէին կորզել ի ձեռաց միմեանց կայսրութիւնը՝ չէ յայտ. սակայն գիտենք ի Տակիտոսէ, թէ երբ Վեսպասիանոս ընտրեցաւ կայսր (69)՝ Տրդատ փութացաւ հաստատել զբարեկամութիւնն ընդ Հռոմայեցիս։ «Ամենայն նահանգք որ թանան ի ծովէն (Միջերկրականէ) մինչև ի սահմանագլուխս Ասիայ և Յունաց, և այնք որ ձգին ի ներքս մինչև ի թագաւորութիւնս Պոնտոսի և Հայոց՝ երդուան հնազանդութիւն» (Տակ. Պատմ. Բ. 81)։

և դարձեալ (անդ 82)—«Հրեշտակք առաքեցան առ Պարթևն և առ Հայ ի Վեսպասիանոսէ՝ յօրդորել ի հաւատարմութիւն»։ Առ նովին Վեսպասիանոսիւ, յետ ոչ բազում ամաց զկնի դարձին Տրդատայ ի Հռոմայ՝ եղաւ Մարաց և Հայոց վրայ արշաւանքն Ալանաց, որոց դէմ Վաղարշ Ա. արքայ Պարթևաց (եղբայր Տրդատայ) խնդրեց Հռոմայեցւոց օգնութիւնը։ Դոմետիանոս, կրտսեր որդին Վեսպասիանոսի, եղբայր Տիտոսի, ջանաց երթալ իբրև հրամանատար օգնական զօրուն, և երբ չյաջողեցաւ՝ կամեցաւ պարգևօք ածել զթագաւորսն Մարաց և Հայոց՝ խնդրել զնա ինքն Դոմետիանոս։ Բայց Ալանք մեկնեցան, թերևս յետ խնամութեանն ընդ Հայոց ըստ մեր վիպասանաց, ինչպէս ունիմք պատմել։ Զարշաւանն Ալանաց կը յիշէ Սուետոն.—«Իբրև Վաղարշ արքայ Պարթևաց խնդրեաց օգնութիւն ընդդէմ Ալանաց, և միւս ևս հրամանատար յորդւոց անտի Վեսպասանու ջան ի գործ առնէր (Դոմետիանոս), զի ինքն առաքեսցի, և իբրև չկարաց լինել գամագիտ՝ զայլս ևս ի թագաւորաց արևելից փորձէր տրովք և խոստմամբք, զի զնա ինքն խնդրեսցեն» (Սուետոն, ի Դոմիտ.)։ Յովսեպոս ժամանակակից և ընտանին Փղաւեանց կը յիշէ աւելի մանր զայս արշաւան, սոյն Տրդատայ պատահած պատմելով ներդեայ պարանին դիպուածը, զոր իբր յետ երեք հարիւր ամաց մեծին Տրդատայ պատահած կը պատմէ Խորենացին (Բ. ՁԵ.)։ Ահա բանք Յովսեպոսի. «Այլուր խօսեալ է մեր զԱլանաց, որ բնակեն առ Տայանիս գետով և առ Մէովտիսն ծովակաւ և են ի բնէ Սկիւթացի։ Ի մտի եդեալ սոցա զայնու ժամանակաւ յաւարի առնուլ զՄարս՝ առնէին ի բանի զարքայն Վրկանից, զի նա միայն ունէր զանցս ընդ որ էր մուտ յաշխարհն։ Պատմի թէ Աղեքսանդր մեծ ետ բանալ զայն կիրճ և թէ փակի նա դրամբք երկաթեօք։ Արդ հասեալ նոցա ի Մարս, իբրև ոչ ոք լինէր նոցա դիմակալ՝ յաւարի առնուլին զաշխարհն, վարէին զոչխար և զարջառ բազում, և Բակուր արքայ Մարաց որ թագաւորէր յայնժամ՝ զահի հարեալ յոյժ խոյս տայր ի լերինս, և ստիպեալ տայր քանքարս հարիւր՝ թափել զկին և զհարճս իւր ի ձեռաց բարբարոսացն։ Այսպէս անցին նոքա անարգել, աւերեալ զամենայն՝ մինչև ի Հայս, ուր թագաւորէր յայնժամ Տրդատէս։ Իշխանս այս հարաւ նոցա ի դիմի, և փոքր միւս ևս՝ և անկանէր ի ձեռս նոցա. քանզի մի ումն ի նոցանէ ընկէց պարան ի պարանոց նորա, և քարշէր զնա՝ եթէ չէր նորա աճապարեալ հատանել զայն սրովն։ Բարբարոսքն ևս առաւել զայրացեալք ընդ կռիւն՝ աւերեցին զաշխարհն և տարան վտարանդի զբազմութիւն գերեաց և կողոպուտ բազում» (Յովս. Պատ. պտրզմ. Հր. Դպր. Է. Գլ.

ԻԹ.)։ Խորենացւոյն պատմութենէն, ուր պարանին դէպքը կ'ընծայուի մեծին Տրդատայ՝ յայտնի է, թէ Արտաշէսն նորա կը կոչուէր և Տրդատ, ապա թէ ոչ անմեկնելի կը մնայ շփոթութիւնն, որ անշուշտ Խորենացւոյն կողմանէ է և ոչ Յովսեպոսի, որ իբր երեք հարիւր ամօք յառաջ է։ Թէ Արտաշէսն Բ. Խորենացւոյն նոյն է ընդ Տրդատայ Տակիտոսի, Յովսեպոսի, Սուետոնի և այլոց ժամանակակից պատմագրաց՝ անտի ևս յայտնի է, զի բազում ինչ զոր սոքա կը պատմեն այս Տրդատայ վրայ՝ ի վիպասանաց մերոց կ'ընծայուի Արտաշիսի։ «Դոմետոն», զորմէ ասեն վիպասանք եկեալ ի Հայս, շինութիւնն—«Հիմնանալ» Արտաշատու յԱրտաշիսէ, մարտ ընդ Ալանս, որ կը յիշուին յերգս՝ բաւական են հաստատել այս նոյնութիւնը։ Չիարդ և իցէ՝ ըստ մեզ գրեթէ առանց երկբայութեան է, թէ Տրդատս այս Տակիտոսի՝ է նոյն ընդ Արտաշիսի Բ. Խորենացւոյն։ Այս նոյնութեան վրայ հիմնեալ՝ ինչ որ Խորենացին կը պատմէ զԱրտաշիսէ իբրև առնուած յերգոց վիպասանաց՝ կը գտնենք հոս իբրև արդարև պատմական, թողլով միայն այլաբանական ձևը։ Ցաւալի է արդարև որ չունինք վիպասանաց երգն ամբողջ զպատերազմէն Արտաշիսի ընդ Հռոմայեցիս։ Խորենացին Դոմետ անունը միայն տեսնելով, որ է անտարակոյս զօրավարն Ներոնի Դոմիտիոս Կորբուղոն, և կարծելով զԴոմետիանոս կայսր՝ կուտայ Արտաշիսի ունենալ գործ ոչ ընդ Դոմետիանոսի միայն, այլ և ընդ Տրայիանոսի և Ադրիանու, այնպէս որ այս պատմութեան նայելով Արտաշէս լինի ապրած մինչև Ադրիանոսի վերջին տարիներն, իբր 135 կամ 137։ Բայց այս ամենուն վրայ պիտի խօսինք յետոյ։ Չէ սակայն հաւանական, թէ Արտաշէս (Տրդատ) ապրեցաւ անդր քան 81 կամ 82, այն է՝ առաջին կամ երկրորդ տարին Դոմետիանոսի։

**12.** Չիարդ և իցէ՝ մենք գանք այժմ ի պատմեալսն ի վիպասանաց որ կուտան մեզ կարևոր տեղեկութիւններ, մանաւանդ Արտաշիսի ներքին կամ առտնին կենաց վրայ։ Հաւանական է, թէ ինչ որ կը պատմէ Խորենացին զպատերազմէն Ալանաց, զխնամութենէն ընդ նոսա կամ զհարսնութենէ Սաթինկան, զտրփանաց սորա ընդ որդիսն Արգամայ կամ Արգաւանայ, զՍմբատայ Բագրատունւոյ զօրավարէն Արտաշիսի, զխրոխտ արքայորդւոյն Արտաւազդայ, զոր դիւաբարոյ գիտէ և՛ վիպասանութիւնն և՛ աւանդութիւնն ազգային, զկռուոյն ընդ Մուրացանս, զգրգռութենէ որդւոցն Արտաշիսի ընդ երիցուն, զՎրուրէ զիմաստնոյ և զբանաստեղծէ, զբաժանմանէ զօրուն, զկարգաց և զյօրինուածոց զոր արար Արտաշէս ի Հայս, որ գրեթէ աւերեալ և անշքացեալ էր բազմա-

մեալ պատերազմներէ՝—առնուած են յերգոց վիպասանաց ըստ նիւթոյն, ուրեք ուրեք նաև բան առ բան։

Ինչպէս տեսանք ըստ Յովսեպոսի՝ մինչ Մարք (Բակուր, 51 — 91) փախստեամբ և կաշառօք հազիւ կը հեռացունեն զԱլանս՝ Տրդատ կամ Արտաշէս պատերազմով կ'ելլէ ընդ առաջ նոցա, գրեթէ համաձայն մեր ազգային աւանդութեան։ Ալանք կ'արշաւեն մեծ բազմութեամբ ի Հայս. Արտաշէս կու տայ պատերազմ, Ալանք կը քաշուին յայնկոյս Կուր գետոյ։ Որովհետև Ալանաց թագաւորին որդին անկեալ էր գերի ի ձեռս Հայոց՝ Ալանք կը խնդրեն հաշտութիւն՝ խոստմամբ այլ ևս չարշաւելոյ ի Հայս, սա պայմանաւ որ պատանին յանձնուի։ Արտաշէս չհաճիր, և քոյր պատանւոյն կը մտնէ միջնորդ, հաճոյ կը թուի յաչս Արտաշիսի, խնամութիւնն կը հաստատուի և օրիորդն Ալանաց Սաթինիկ կը հարսնանայ Հայոց։— «Զայսու ժամանակաւ միաբանեալ Ալանք լեռնականօքն ամենայնիւ, յինքեանս արկանելով և զկէս Վրաց աշխարհին, մեծաւ ամբոխիւ տարածեալ ընդ աշխարհս մեր։ Ժողովէ և Արտաշէս զիւրոյ զօրացն բազմութիւն, և լինի պատերազմ ի մէջ երկրիս երկոցունց ազգացն քաջաց և աղեղնաւորաց։ Սակաւ ինչ տեղի տայ ազգ Ալանաց, և գնացեալ անցանէ ընդ գետն մեծ Կուր, և բանակի առ եզերբ գետոյն ի հիւսիսոյ. և հասեալ Արտաշիսի բանակի ի հարաւոյ, և գետն ընդ մէջ նոցա։ Բայց քանզի զորդի Ալանաց արքային ձերբակալ արարեալ զօրացն Հայոց ածին առ Արտաշէս՝ զխաղաղութիւն խնդրէր արքայն Ալանաց, տալ Արտաշիսի զինչ և խնդրեսցէ. և երդմունս և դաշինս ասէր հաստատել զմշտնջենաւորս, որպէս զի մի՛ ևս մանկունք Ալանաց ասպատակաւ հինից ելցեն յաշխարհն Հայոց։ Եւ ի չառնուլ յանձն Արտաշիսի առ ի տալ զպատանին՝ գայ քոյր պատանւոյն յափն գետոյն ի դարաւանդ մի մեծ, և ի ձեռն թարգմանչաց ձայնէ ի բանակն Արտաշիսի. Քեզ ասեմ, այր քաջ Արտաշէս, որ յաղթեցեր քաջ ազգին Ալանաց. եկ հաւանեաց աչագեղոյ դստերս Ալանաց՝ տալ զպատանիդ. զի վասն միոյ քինու ոչ է օրէն դիւցազանց՝ զայլոց դիւցազանց զարմից բառնալ զկենդանութիւն, կամ ծառայեցուցանելով և՛ ի ստրկաց կարգի պահել, և՛ թշնամութիւն յաւիտենական ի մէջ երկոցունց ազգաց քաջաց հաստատել։ Եւ լուեալ Արտաշիսի զայսպիսի իմաստուն բանս՝ գնաց յեզր գետոյն, և տեսեալ զկոյսն գեղեցիկ և լուեալ ի նմանէ բանս իմաստութեան՝ ցանկացաւ կուսին։ Եւ կոչեցեալ զդայեակն իւր զՍմբատ՝ յայտնէ նմա զկամս սրտի իւրոյ, առնուլ զօրիորդն ի կնութիւն իւր և դաշինս և ուխտս հաստատել ընդ ազգի քաջացն և զպատանին արձակել ի խաղաղու-

թիւն։ Եւ հաճոյ թուեցեալ Սմբատայ՝ առ արքային Ալանաց յղէ՝ տալ զաղջիկն օրիորդն Ալանաց զՍաթինիկ ի կնութիւն Արտաշիսի։ Եւ տայ արքային Ալանաց. Եւ ուստի՞ տացէ քաջն Արտաշէս հազարս ի հազարաց և բիւրս ի բիւրուց ընդ քաջազգւոյ կոյս օրիորդիս Ալանաց։ Զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն յերգելն իւրեանց ասեն. Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ, և հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն, և անցեալ որպէս զարծուի սրաթև ընդ գետն, և ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝ ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց, և շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին, արագ հասուցանելով ի բանակն իւր։ Որ և ճշմարտութեամբ ունի այսպէս։ Քանզի պատուեալ է առ Ալանս մորթ կարմիր՝ լայքա շատ և ոսկի բազում տուեալ ի վարձանս՝ առնու զաղջիկն օրիորդն Սաթինիկ։ Դոյնպէս զհարսանեացն առասպելեալ երգեն, այսպէս ասելով. Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն։ Քանզի սովորութիւն իսկ էր թագաւորացն մերոց, փեսայութեամբ ի դուռն տաճարին հասանել՝ դահեկանս ճապաղել իբրև զհիւպատեանն Հռոմայեցւոց. սապէս և թագուհեացն յառագաստին՝ մարգարիտ» (Խոր. Բ. Ծ.)։ Սաթինիկ որ այնպէս շքով հարսնացաւ Արտաշիսի՝ կը թուի վրդովեալ զառտնին կեանս նորա սիրահարութեամբքն ընդ որդւոյն Արգամայ (Արգաւանայ ըստ առասպելին) նահապետի Մարցեղին (Մուրացան, որ ունէր զառ ստորոտովն Մասեաց). պարագայ մը՝ զոր սքողելով կ'անցնի վիպասանն ի պատիւ իւրոյ դիցազին. «Այլև տենչայ Սաթինիկ տիկին տենչանս՝ զարտախուր խաւարտ և զտից խաւարծի ի բարձիցն Արգաւանայ» (Խոր. Ա. Լ.)։ Ոչ սակաւ կը դառնացունէ զառտնին կեանս Արտաշիսի և երէցն նորա, գոռոզն Արտաւազդ, որոյ թելադրութենէն կը ծագի թշնամութիւն ի մէջ թագաւորին և Արգամայ, որպէս թէ ի ճաշուն զոր կու տայ Արգամ արքայի՝ Արգամեանք կամէին դաւել զարքայ, և կը յառնէ անդէն խռովութիւն, մինչև քարշել որդւոց արքայի զծերունին Արգամ, և այս պատճառաւ, ինչպէս կ'երևի՝ կը յառնէ ներքին պատերազմ, որոյ արդիւնքն եղաւ աւեր և ջնջումն Մուրացան ցեղին։—«Ի չափ հասեալ Արտաւազդայ որդւոյ Արտաշիսի՝ եղև այր քաջ, անձնահաճ և հպարտ, և նախանձ բերելով ընդ ծերունւոյն Արգամայ՝ հրապուրեաց զհայր իւր ցասնուլ Արգամայ, որպէս թէ թագաւորել ի վերայ ամենայնի խորհիցի։ Այսպէս ընկեցեալ զնա ի պատուոյն՝ ինքն առնու զերկրորդութիւնն։ Յետ այնր երկթալով Արտաշիսի ի ճաշ Արգամայ, կասկած իմն անկեալ, իբր թէ դաւել զարքայն խորհեցան՝ յարուցանեն որդիքն արքայի

տպշող, և անդէն իսկ ի հացին քարշեն զոլխն Արգամայ։ Եւ խռովութեամբ մեծաւ եկեալ յԱրտաշատ Արտաշէս արքայ՝ դարձեալ արձակեաց զորդի իւր զՄաժան մեծաւ գնդաւ, և զբազումս յազգէն Մուրացան սպանանել հրամայեաց և զապարանսն Արգամայ այրել, և զհարճ նորին, որ կարի չքնաղ էր գեղով և մնացեալ գնացիւք ոտից, զոր կոչէին Մանդու՝ ածել ի հարճութիւն Արտաշիսի։... Եւ Արտաւազդայ ոչ շատացեալ առնուլ ի բաց ի նոցանէ զերկրորդութեան պատիւն՝ յաւելու ևս հանել և զՆախճաւան և ըստ հիւսիսոյ Երասխայ զամենայն գիւղս, յորում և ապարանս և բերդս ի նոցանէ շինէ իւր ի ժառանգութիւն։ Այսմ ոչ կարացեալ համբերել որդւոյն Արգամայ՝ ընդդիմանայ նմա պատերազմաւ. բայց յաղթեալ արքայորդւոյն՝ սատակէ զամենայն ծնունդս Արգամայ հանդերձ հարբն և որք միանգամ երևելիք էին յազգէ Մուրացան, և գրաւէ լինքն զշէնս և զամենայն իշխանութիւնս նոցա. և ոչ ոք ապրեաց ի նոցանէն, բայց միայն աննշանաւորք ոմանք և կըրտսերք փախուցեալ առ Արտաշէս՝ ապրեցան ի դրան արքունի»։ «Այս Արգամ է, կը յաւելու Խորենացին, որ յառասպելըն Արգաւանն անուանի, և այս պատճառ պատերազմին ընդ Արտաւազդայ»։

Ի բանից աստի Խորենացւոյն կը տեսնուի, թէ ի մէջ Արգամայ և Արտաւազդայ պատերազմի խօսք կար յերգս վիպասանաց այլաբանութեամբ, զոր պարզելով կը պատմէ Խորենացին, որպէս թէ ասիցէ. Ահա բուն պատճառ պատերազմին որ այլաբանութեամբ պատմի յառասպելըն։ Այլ թէ Արտաշիսի կենաց ինչպէս ուրիշ շատ պարագաներն, նոյնպէս այս պատերազմն հանդերձ հետևանօք կը յիշուէր յերգս վիպասանաց՝ այսմ Խորենացին զնոյն ինքն զմեկնաս իւր Սահակ կոչէ վկայ. «Արտաշիսի վերջնոյ գործք՝ բազում ինչ յայտնի են քեզ ի վիպասանացն որ պատմին ի Գողթան... որփանք Սաթինկան ընդ վիշապազունսն՝ առասպելաբար, այսինքն ընդ զարմս Աշդահակայ, որ ունին զամենայն զառ ստորոտովն Մասեաց, մարտ ընդ նոսա և քայքայումն յիշխանութենէ և սպանումն նոցա և հրկիզութիւն շինուածոցն» (Խոր. Բ. ԽԹ.)։ Գալով Մուրացան, այն է Մար ցեղի մը յարևելից Մասեաց՝ յայտնի է և՛ արտաքին (Ստրաբոն) և՛ ազգային (Բուզանդ) պատմութենէ, թէ արևելեան այն մասն Հայոց՝ էր մարական։ Այս յայտնի է մանաւանդ ի վիպասանաց, ուր այն մասն Հայոց կը կոչուի *Մարք*, և Արտաւազդայ ակն դնելն այն մասին, մինչև շինել անդ իւր քաղաք՝ կ'ակնարկուի, ինչպէս կ'երևի, հեգնօրէն. «Այլ և Արտաւազդայ ոչ գտեալ, քաջի որդւոյն Արտաշիսի, տեղի ապարանից ի հիմնանալն Արտաշատու՝ նա անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց

զՄարակերտ, որ է ի դաշտին որ անուանեալ կոչի Շարուրայ» (Խոր. Ա. Լ.)։

Արտաւազդ որ ամէն իշխանութիւն կամէր ունել ի ձեռին՝ յետ հանելոյ զերկրորդական գահն ի Մուրացանաց գրեթէ իսպառ ջնջմամբ նոցա՝ կը թուի ինկած նաև ընդ Սմբատայ, քաջի սպարապետին Արտաշիսի։ Սմբատ, ըստ Խորենացւոյն, յետ մեծամեծ քաջութեանց կ'երթայ յերկիրն Ալանաց, ազատել զեղբայրն Սաթինկան բռնաւորէ մը, և յաղթելով ապստամբին՝ ոչ միայն կը հաստատէ մանուկ իշխանն ի թագաւորութեան իւրում, այլ և կը բերէ ապստամբներէն գերի, զոր կը բնակեցունէ յարևելից Մասեաց, ի գաւառին Շաւարշական, զոր կ'անուանէ Արտազ յանուն երկրին ուստի էին գերեալքն։—Այս Սմբատ «յետ այնչափ արութեանց՝ օգնական Սաթինկայ եղբօրն յաշխարհն Ալանաց հանդերձ զօրու երթայ հրամանաւ Արտաշիսի։ Քանզի մեռաւ հայր Սաթինկան, և այլ ոմն բռնացեալ թագաւորեաց աշխարհին Ալանաց և հալածէր զեղբայրն Սաթինկան. զոր վանեալ հերքէ Սմբատ և տիրացուցանէ ի վերայ ազգին զեղբայրն Սաթինկան, և զերկիր հակառակորդացն աւերէ. զամենայն միահամուռ ածէ գերի սաստիկ յԱրտաշատ։ Եւ հրամայեալ Արտաշիսի բնակեցուցանել զնոսա ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց, որ կոչէր Շաւարշական գաւառ, ի վերայ պահելով զբնիկ անունն Արտազ, քանզի և աշխարհն ուստի գերեցանն՝ Արտազ կոչի մինչև ցայսօր ժամանակի» (Խոր. Բ. ԾԲ.)։ Զգաւառն Շաւարշական կը յիշէ Խորենացին այլուր ևս (Բ. ԼԴ.) Շաւարշան անուամբ, առնլով, ինչպէս յայտնի է՝ ի վկայաբանութենէ ուստեք Թադէի (Ինճիճ. Ստոր. հին. Հյ. էջ 202)։ Սմբատ կ'երթայ նաև յերկիրն Կասպից ապստամբելոց ի Հայոց, և նուաճելով կը բերէ գերի հանդերձ թագաւորաւ նոցա և կը վարձատրուի, բայց ստիպեալ Արտաւազդայ հակառակութենէն՝ կ'առանձնանայ ի Կորդիս։— «Նաև Կասբից երկիրն ապստամբեն ի մերոյ արքայէն։ Վասն որոյ առաքէ ի վերայ նոցա Արտաշէս զՍմբատ ամենայն զօրօքն Հայոց, ինքն արքայ յուղարկաւոր երթալով աւուրս եւթն։ Իսկ Սմբատայ երթեալ հնազանդէ զամենեսեան. բայց զերկիրն Կասբից աւերեալ՝ առաւել քան զԱրտազեան գերին ածէ ի Հայս, ընդ որս և զԶարդմանոս անուն թագաւոր նոցին։ Վասն որոյ արժանի ըստ վաստակոցն պարգևէ նմա Արտաշէս զմասն արքունի որ ի շէնս Գողթան և զՈւղտու ակունս. և առ այսոքիկ և զաւարն ամենայն նմա թողու։ Ընդ որ նախանձեալ Արտաւազդ կամեցաւ սպանանել զՍմբատ. և յայտնեալ խորհրդոյն՝ բազում խռովութիւն վասն այնր լինէր հօրն։ Իսկ Սմբատայ տեղի տուեալ գնաց զկողմամբք Ասորեստանի.

ձիւրով կամաւ թողու զիշխանութիւն զօրացն Հայոց, ընդ որ խանդայր Արտաւազդ։ Հրամանաւ Արտաշիսի բնակէ ի Տմորիս, որ այժըմ կոչի Կորդրիք, և ի յԱլկի նստուցեալ զբազմութիւն գերւոյն. քանզի էր ի ծերութեան կին արարեալ յասորեստանեաց հուպ յայն կողմանս, զոր յոյժ սիրեաց, վասն այնորիկ և զնորին կողմամբք բնակեցաւ» (Խոր. Բ. ԾԴ)։ Պատմուածներն զՍմբատայ այս երկու գլուխներուն մէջ (Բ. Դպր., ԾԲ, ԾԴ) կրնան համարուիլ պատմական, իբրև առնուած վիպասանաց երգերէն, և այս շատ հաւանական կը թուի մեզ Սմբատայ անձին նկարագրէն, զոր կը դնէ Խորենացին ի յառաջաբանի ԾԲ. գլխոյն, «ըստ առասպելին», որով չէ անդէպ իմանալ զերգն վիպասանաց.—«Սիրելի է ինձ ասել և վասն առնն քաջին Սմբատայ, քանզի արդարև ըստ առասպելին ոչ ինչ կարի հեռի ի ճշմարտութենէն. որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն, և առաքինութեան ոգւոցն որսորդ, և գեղեցկութեան ալեօք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրակոնտիկոն ի վերայ ոսկւոյ և ի մէջ մարգարտոյ ծագէր. և ի վերայ շոյտ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի, տուչութիւն յաջողուածոյ ունէր ի մարտս առաւել քան զամենայն ոք»։

Չէ անդէպ նոյնպէս յերգոց վիպասանաց առնուած կարծել Արտաւազդայ առնուլն սպարապետութիւնը, նախանձելն նմա եղբարց նորա ի գրգռութենէ կանանց, մինչև ստիպել Արտաշէսի բաժնել կառավարութեան գլխաւոր պաշտօններն,—Վրոյր անուն առն ումեմն իմաստնոյ և բանաստեղծի տալ արքունի տան հազարապետութիւնը, կարգել յորդւոց իւրոց զՄաժան քրմապետ, և զզօրսն բաժնելով չորս գունդ, արևելեան, արևմտեան, հարաւային և հիւսիսային՝ տալ մէն մի գունդ Սմբատայ և միւս որդւոց իւրոց Արտաւազդայ, Տիրանայ և Զարեհի. յորոց Զարեհ անկանի ի ձեռս Կարձամայ ուրումն արքայի Վրաց և կ՚ազատի ի ձեռն եղբարց իւրոց և Սմբատայ.—«Իսկ Արտաւազդ յետ գնալոյն Սմբատայ առնու ի հօրէն, որում յանկայրն՝ զիշխանութիւն զօրացն ամենայնի։ Եւ նախանձ բերելով ընդ նմա եղբարցն ի գրգռութենէ կանանց իւրեանց՝ վասնորոյ կարգէ Արտաշէս զՎրոյր՝ հազարապետ, զայր իմաստուն և բանաստեղծ, և հաւատայ ի նա զամենայն գործս տանն արքունի, զՄաժան կարգէ քրմապետ ի յԱնի դիցն Արամազդայ։ Բաժանէ Արտաշէս և զիշխանութիւն զօրուն ընդ չորս. զարևելեանն թողու ի վերայ Արտաւազդայ և զարևմտեանն տայ Տիրանայ, զհարաւայինն ի Սմբատ հաւատայ և զհիւսիսայինն ի Զարեհ։ Եւ Զարեհ էր այր սէգ և յորս երէոց նահա-

զՄարակերտ, որ է ի դաշտին որ անուանեալ կոչի Տարուբայ» (Խոր. Ա. Լ.)։

Արտաւազդ որ ամէն իշխանութիւն կամէր ունել ի ձեռին՝ յետ հանելոյ զերկրորդական գահն ի Մուրացանաց գրեթէ խսպառ ջնջմամբ նոցա՝ կը թուի ինկած նաև ընդ Սմբատայ, քաջի սպարապետին Արտաշիսի։ Սմբատ, ըստ Խորենացւոյն, յետ մեծամեծ քաջութեանց կ'երթայ յերկիրն Ալանաց, ազատել զեղբայրն Սաթինկան բռնաւորէ մը, և յաղթելով ապստամբին՝ ոչ միայն կը հաստատէ մանուկ իշխանն ի թագաւորութեան իւրում, այլ և կը բերէ ապստամբներէն գերի, զոր կը բնակեցունէ յարևելից Մասեաց, ի գաւառին Տաւարշական, զոր կ'անուանէ Արտազ յանուն երկրին ուստի էին գերեալքն։—Այս Սմբատ «յետ այնչափ արութեանց՝ օգնական Սաթինկայ եղբօրն յաշխարհն Ալանաց հանդերձ զօրու երթայ հրամանաւ Արտաշիսի։ Քանզի մեռաւ հայր Սաթինկան, և այլ ոմն բռնացեալ թագաւորեաց աշխարհին Ալանաց և հալածէր զեղբայրն Սաթինկան. զոր վանեալ հերքէ Սմբատ և տիրացուցանէ ի վերայ ազգին զեղբայրն Սաթինկան, և զերկիր հակառակորդացն աւերէ. զամենայն միահամուռ ածէ գերի սաստիկ յԱրտաշատ։ Եւ հրամայեալ Արտաշիսի բնակեցուցանել զնոսա ի հարաւոյ յարևելից կուսէ Մասեաց, որ կոչէր Տաւարշական գաւառ, ի վերայ պահելով զընիկ անունն Արտազ, քանզի և աշխարհն ուստի գերեցանն՝ Արտազ կոչի մինչև ցայսօր ժամանակի» (Խոր. Բ. ԾԲ.)։ Զգաւառն Տաւարշական կը յիշէ Խորենացին այլուր ևս (Բ. ԼԴ.) Տաւարշան անուամբ, առնլով, ինչպէս յայտնի է՝ ի վկայաբանութենէ ուստեք Թադէի (Ինճիճ. Ստոր. հին. Հյ. էջ 202)։ Սմբատ կ'երթայ նաև յերկիրն Կասպից ապստամբելոց ի Հայոց, և նուաճելով կը բերէ գերի հանդերձ թագաւորաւ նոցա և կը վարձատրուի, բայց ստիպեալ Արտաւազդայ հակառակութենէն՝ կ'առանձնանայ ի Կորդիս։—«Նաև Կասբից երկիրն ապստամբեն ի մերոյ արքայէն։ Վասն որոյ առաքէ ի վերայ նոցա Արտաշէս զՍմբատ ամենայն զօրօքն Հայոց, ինքն արքայ յուղարկաւոր երթալով աւուրս ութն։ Իսկ Սմբատայ երթեալ հնազանդէ զամենեսեան. բայց զերկիրն Կասբից աւերեալ՝ առաւել քան զԱրտազեան գերին ածէ ի Հայս, ընդ [illegible] զՁարդմանոս անուն թագաւոր նոցին։ Վասնորոյ ար[illegible]

կոցն պարգևէ նմա Արտաշէս զմասն ար[illegible]

և զՈւղտու ակունս. և առ այս[illegible]

ղու։ Ընդ որ նախանձեալ Ար[illegible]

և յայտնեալ խորհրդոյն՝ [illegible]

հօրն։ Իսկ Սմբատայ [illegible]

ձիւրով կամաւ Թողու զիշխանութիւն զօրացն Հայոց, ընդ որ խանդայր Արտաւազդ։ Հրամանաւ Արտաշիսի բնակէ ի Տմորիս, որ այժըմ կոչի Կորդրիք, և ի յԱլկի Նստուցեալ զքաղմութիւն գերւոյն. քանզի էր ի ծերութեան կին արարեալ յաստրխստանեաց հուպ յայն կողմանս, զոր յոյժ սիրեաց, վասն այնորիկ և զնորին կողմամբք բնակեցաւ» (Խոր. Բ. ԾԳ)։ Պատմուածներն զՍմբատայ այս երկու գլուխներուն մէջ (Բ. Դպր., ԾԲ, ԾԳ) կրնան համարուիլ պատմական, իբրև առնուած վիպասանաց երգերէն, և այս շատ հաւանական կը թուի մեզ Սմբատայ անձին նկարագրէն, զոր կը դնէ Խորենացին ի յառաջաբանի ԾԲ. գլխոյն, «ըստ առասպելին», որով չէ անդէպ իմանալ զերգն վիպասանաց.—«Սիրելի է ինձ ասել և վասն առնն քաջին Սմբատայ, քանզի արդարև ըստ առասպելին ոչ ինչ կարի հեռի ի ճշմարտութենէն. որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն, և առաքինութեան ոգւոյն որսորդ, և գեղեցկութեան ալեօք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրակոնտիկոն ի վերայ ոսկւոյ և ի մէջ մարգարտոյ ծագէր. և ի վերայ շոյտ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի, տուչութիւն յաջողուածոյ ունէր ի մարտս առաւել քան զամենայն ոք»։

Չէ անդէպ նոյնպէս յերգոց վիպասանաց առնուած կարծել Արտաւազդայ առնուլն սպարապետութիւնը, նախանձելն նմա եղբարց նորա ի գրգռութենէ կանանց, մինչև ստիպել Արտաշիսի բաժնել կառավարութեան գլխաւոր պաշտօններն,—Վրոյր անուն առն ումեմն իմաստնոյ և բանաստեղծի տալ արքունի տան հազարապետութիւնը, կարգել յորդւոց իւրոց զՄաժան քրմապետ, և զզօրսն բաժնելով չորս գունդ, արևելեան, արևմտեան, հարաւային և հիւսիսային՝ տալ մէն մի գունդ Սմբատայ և միւս որդւոց իւրոց Արտաւազդայ, Տիրանայ և Զարեհի. յորոց Զարեհ անկանի ի ձեռս Քարձամայ ուրումն արքայի Վրաց և կ՚ազատի ի ձեռն եղբարց իւրոց և Սմբատայ.—«Իսկ Արտաւազդ յետ գնալոյն Սմբատայ առնու ի հօրէն, որում ցանկայրն՝ զիշխանութիւն զօրացն ամենայնի։ Եւ նախանձ բերելով ընդ նմա եղբարցն ի գրգռութենէ
կանանց իւր ... որոյ կարգէ Արտաշէս զՎրոյր՝ հազարա-
... բանաստեղծ, և հաւատայ ի նա զամե-
...ւի, զՄաժան կարգէ քրմապետ ի յԱնի
...է Արտաշէս և զիշխանութիւն զօրուն
...ղու ի վերայ Արտաւազդայ և զարև-
...րաւայինն ի Սմբատ հաւատայ և զհիւ-
...եհ էր այր սէգ և յորս երէոց Նահա-

տակ, իսկ առ պատերազմունս վատ և տաղտուկ. զորոյ զփոխ առեալ Քարձամայ ուրումն արքայի Վրաց՝ տպստամբեցուցանէ զեր- կիրն, և կապեալ զԶարեհ՝ ի բանտի դնէ ի Կաւկաս։ Ընդ որում պատերազմեալ Արտաւազդայ և Տիրանայ հանդերձ Սմբատաւ՝ դար- ձուցանեն զերիբայրն ի մեծ կապանաց և ի բանտէ» (Խոր. Բ. ԾԳ)։

Ըստ Լանկլուայի (Հաւաքածոյ պատմ. Հայոց, Հտ. Բ. էջ 108 ծանօթ. 1), այս պատերազմն Հայոց ընդ Վիրս՝ յիշուած է ի պատ- մութեան Վրաց Վախտանկայ, զոր հրատարակեց Եդ. Պրոսէ (էջ 69—70, և ի ծանօթութիւնսն)։ Քարձամ անունը զոր կու տայ Խորենացին յայնժամու թագաւորին Վրաց՝ է արդարև մերձ Խար- թամ անուան առաջնոյ թագաւորին Արմազայ. բայց Խարթամ ի վաղուց մեռած էր յայնժամ. իսկ այն պատերազմն Հայոց եղած է ի թագաւորութեանն Արմազելայ, անուն՝ որ չունի ամենևին նմա- նութիւն Քարձամ անուան. բայց և այնպէս առանց երկբայութեան է, թէ Վախթանկայ պատմութեան պատերազմն ընդ Հայոց առ Ար- մազելիւ է գրեթէ նոյն ընդ պատմութեան Խորենացւոյն։ «Յետ ուերմանց, կ՚ըսէ պատմիչն Վիր, զորս գործած էին Հայք ի Վիրս, ոգի առեալ սոցա սակաւ մի՝ միաբանութեամբ այլոց ցեղից յարձա- կեցան ի Հայս, մինչ զօրք Հայոց և երկու որդիք թագաւորին հան- դերձ Սումպատաւ կը կռուէին Պարսից դէմ։ Երբ Վիրք սաստ- կացուցին պատերազմը՝ Արտաշամ (Արտաշէս) յանձնեց գունդ մի ի ձեռս Զարենի (Զարեհ) պատերազմել ընդ Վիրս։ Խռնուեցան ճակատք ի ծուախէթ. Զարեն յաղթուելով գերի ընկաւ և դրուե- ցաւ յամրոցին դրանց Կովկասու։ Վիրք յետոյ արձակեցին զԶարեն՝ առնլով յետս գաւառ մի, զոր գրաւած էին Հայք։ Վրացի պատմիչն կը յիշէ յետոյ ուրիշ պատերազմ, որ եղաւ երիւք ամօք յետոյ և որոյ զհետ եկն խաղաղութիւն ի մէջ երկուց ազգաց։

Խորենացին կը յիշէ իսկ ի համառօտութեան անդ երգոց վի- պասանաց զգործոց Արտաշիսի, Արտաշիսի որդւոց Նախանձը և գրգռութիւնն ընդ միմեանս ի ձեռն կանանց.—«Արտաշիսի վերջնոյ գործք յայտնի են քեզ ի վիպասանացն, որ պատմին ի Գողթան,... Նախանձ որդւոցն Արտաշիսի և գրգռութիւն ընդ միմեանս ի ձեռն կանանցն» (Խոր. Բ. ԽԹ.)։ Չէ անդէպ նաև ի վիպասանաց առ- նուած կարծել Արտաշիսի ուղղութեանց յիշատակութիւնն ի շինու- թիւն երկրին. և արդարև վայել իսկ էր այնպիսի շինութեանց ձեռնարկել Արտաշիսի, որ անձամբ տեսած էր այնչափ հռոմէա- կան գաւառներ, մանաւանդ զԻտալիա և զՀռոմ իսկ յերկայն և ի փառաւոր ճանապարհորդութեան իւրում։—«Բազում ինչ գործք յաւուրս Արտաշիսի գործեցան։... (Հայք) ի մեծամեծ արուեստից և

ի գիտութեանց ունայնացեալք էին, որպէս Հինից և ասպատակաց պարապեալք, և այսպիսի գիտութեանց կամ անփոյթ արարեալք և կամ ոչ հասեալք, պչաքաթուց առեմ և զամսոց և զտարեաց բոլորմանց։ Քանզի ոչ այնպիսի ինչ ճանաչիւր առ նոսա, այլոց ազգաց վարելով. և ոչ ի ծովակս աշխարհիս նաւագնացութիւնք, և ոչ ի վերայ գետոց ճանապարհորդութիւնք, և ոչ գործիք ձկանց որսոց, այլ և ոչ յամենայն տեղիս երկրագործութիւնք, բայց դոյզն ուրեք. ըստ օրինակի հիւսիսականաց կողմանց շաղղակերութեամբ և այլովք այսպիսեօք կեցեալք։ Եւ այս ամենայն յօրինի յաւուրս Արտաշիսի» (Խոր. Բ. ԾԹ)։ Արդարև տխուր նկարագիր զՀայոց, եթէ ճշգիւ առնունք զբանս Խորենացւոյն։ Ըստ Խորենացւոյն Հայք, թէպէտ ի պատճառս յաճախութեան ասպատակութեանց և Հինից՝ չկրցան լինել յառաջադէմ և մնացին կէս բարբարոս. չունէին, թող աստեղագիտական և տոմարական հաշիւներ՝ խոնարհագոյն արուեստներ անգամ, որպիսի են նաւարկութիւն ի ծովակս և ձկնորսութիւն. երկրագործութիւն իսկ կար դուն ուրեք և անօսր. անտառաբնակ վայրի ժողովրդոց պէս յորսոյ միայն («շաղղակերութիւն») կ'ապրէին Հայք յառաջ քան զԱրտաշէս։ Այս չմիաբանիր արդարև ընդ վկայութեան Քսենոփոնի (տես Ա. մասն), որ հանդերձ և արդիւնարար ժողովուրդ գտէ զՀայս, առ որս գտաւ նա առատութիւն արդեանց մշակութեան և հովուութեան և ինչ որ յուսալի էր աստի իբր քսան և հինգ դար յառաջ շինական ժողովրդենէ, մինչև գիտել պատրաստել ազգի ազգի ըմպելիս և իւղս անուշունս։ Եթէ զբանս Խորենացւոյն չափազանց ևս առնունք՝ սաչափ գոնէ ստոյգ է, թէ առ Տրդատ-Արտաշիսիւ սկսան ոգի առնուլ Հայք ներքին և արտաքին խաղաղութիւններէ։ Տրդատ էր երկու մեծ գրագէտ տէրութեանց հետ հաշտ, Պարթևաց հետ՝ իբրև ազգական և ի նոցանէ դրուած, և Հռոմայեցւոց հետ՝ իբրև հաստատեալ ի նոցանէ և դաշնակից։ Այս դիրքը չէզոքացուցած էր այն երկու ազգաց ոսոխութիւնը։ Այսպիսի ինչ ժամանակ հարկաւ դիպողագոյն էր Հայոց ի բարգաւաճել ըստ տանելոյ ժամանակին, մինչև յիրաւի է մեզ համարել Արտաշիսի թագաւորութիւնն նոր դարագլուխ մեր պատմութեան մէջ։ Ցայտնի ապացոյց մեծութեան Արտաշիսի ժամանակին՝ է մեծ փոյթն վիպասանաց յերգել զայն. «Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ ի վիպասանացն որ պատմին ի Գողթան»։ Թերևս այս բարենշան ժամանակն է, որ յաւել հայերէն լեզուին նոր ազնուական շարժումն, որ տևեց բաւեց մինչև ի կէսն հինգերորդ դարու։

Որպէս արդէն ասացաւ՝ Արտաշիսի թագաւորութիւնը չանցնիր

առաջին կամ երկրորդ տարին Դոմետիանոսի (81, 82), մինչ տակաւին կ'ապրէր ի Պարթեւս դիւցազնն պաշտաւեան տան Վաղարշ Ա։

Ի Վոնոնէ մինչեւ ի Տրդատ-Արտաշէս, ինչպէս տեսանք արտաքին եւ ներքին ժամանակակից վկայութիւններէ՝ կացին Հայոց թագաւորք.—

1. Վոնոն, եկամուտ (16), որ յետ սակաւուց կ'ստիպուի թողլ խոյս։

2. Զենոն, զոր Հայք կոչեցին Արտաշէս, ի ձեռն Գերմանիկոսի, հրամանաւ Տիբերի (18)։

3. Արշակ Պահլաւ, որդի Արտաւանայ Գ, զօրութեամբ Պարթեւաց (34)։

4. Միհրդատ Վիր (Սանատրուկ յաւանդութեան Հայոց) ի կողմանէ Հռոմայեցւոց, հրամանաւ Տիբերի (35)։

Միհրդատ կը հանուի հրամանաւ Կաղիգուղայ (37), եւ Հայաստան կը մնայ ընդ ձեռամբ Պարթեւաց իբրեւ նահանգ (37—41)։

5. Միհրդատ երկրորդ անգամ հրամանաւ Կղաւդեայ (41—45)։

6. Հռադամիստ (Երուանդ յաւանդութեան Հայոց), որդի Փարսմանայ արքայի Վրաց, հնարիւք Փարսմանայ (45—53)։

7. Տրդատ (ըստ Խորենացւոյն կամ մանաւանդ ըստ վիպասանաց Արտաշէս), եղբայր Վաղարշու Ա, Պահլաւ ի կողմանէ Պարթեւաց (53)։

8. Արշակ ումն պատերազմին ժամանակ ի կողմանէ Հռոմայեցւոյ (58)։

9. Տրդատ-Արտաշէս կը հաստատուի հաճութեամբ Հռոմայեցւոց (64—82)։

Ի Տրդատ-Արտաշիսէ մինչեւ ի մեծն Տրդատ նորին համանուն կամ մինչեւ ի վախճան թագաւորութեանն Պարթեւաց՝ կուգայ Հայաստանի համար դարձեալ խռովալից ժամանակ։



# ԳԼՈՒԽ ԺԲ.

## ՀԱՅՔ Ի ՄԱՀՈՒԱՆԷՆ ՏՐԴԱՏ-ԱՐՏԱՇԻՍԻ ՄԻՆՉԵՒ Ի ՏՐԴԱՏ ՄԵԾ։

### *ՀՌՈՄԷԱԿԱՆ—ՍԱՍԱՆԵԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ:*

*1. Արտաւազդ յաջորդ Տրդատ-Արտաշիսի. առասպել զնմանէ: 2. Աշխադար, որդի Տրդատ-Արտաշիսի: 3. Տրայիանոս յարեւելս. Պարթամասիր: 4. Պարթամասպատ. Հայաստան նահանգ: 5. Ադրիանոս. Հայք միւսանգամ թագաւորութիւն: 6. Անտոնինոս Պիոս. Աքեմենիդ: 7. Վաղարշ Գ. Պարթեւ. Սոյեմոս. Ղուկիոս Վերոս: 8. Սանատրուկ. Սեպտիմոս Սեւերոս: 9. Վաղարշ արքայ Հայոց: 10. Կարակալլա. Վաղարշ կը բանտարկուի: 11. Մակրինոս. Կը ղրկէ թագ առ Տրդատ Բ. որդի Վաղարշու: 12. Կործանումն Պահլաւ ցեղին: 13. Դիտաւորութիւն Արտաշրի: 14. Պատճառք անկման Հայոց: 15. Թէ ի՛նչ եղաւ Արտաշիր: 16. Կարծիք զյաջողութենէն Սեւերոսի: 17. Մահ Արտաշրի. Հայք առ յաջորդօք նորա: 18. Գորդիանոս: 19. Իրք արեւելից առ յաջորդով նորա Փիլիպպոսի մինչեւ ի Վաղերիանոս: 20. Շապուհ Ա. Ոդենատոս իշխան Պաղմիրայ: 21. Հայք առ Շապհով. Արտաւազդ ոմն արքայ Հայոց: 22. Անկումն Պաղմիրայ. Յաջորդք Աւրեղիանու—Պրոբոս, Կարոս, Նումերիանոս: 23. Ներսեհ. Կրկին ճակատք առ Դիոկղետիանոսիւ. Գաղերիոս:*

**1.** Տրդատ-Արտաշիսի կը թուի յաջորդեալ մոլեգինն Արտաւազդ, որ պատահարէ, հաւանականապէս յորսի՝ կը թուի անհետացեալ յետ կարճ թագաւորութեան, մինչև չթողուլ յիշատակ յարտաքին պատմութեան։ «Յետ Արտաշիսի, ասէ Խորենացին, թագաւորէ Արտաւազդ որդի նորա,... որ յետ սակաւ ինչ աւուրց թագաւորելոյն իւրոյ անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի որսալ կինճս և իշավայրիս զակամբք Գինայ՝ աղմկեալ իմն ի ցնորից խելագարանաց, ընդ վայր յածելով երիվարաւն՝ անկանի ի խոր իմն մեծ, և խորասոյզ լեալ անհետի» (Խոր. Բ. ԿԱ)։ Արտաւազդայ բարուց, որպէս և նորա կարճառօտ թագաւորութեան և վախճանին վրայ ասացեալքն ի Խորենացւոյն ըստ ամենայնի կը հաստատուին ի վիպասանաց և յազգային զրուցաց։ Ըստ վիպասանաց Գողթան,

որպէս ասէ Խորենացին, Արտաւազդ տեսնելով բազմութիւն ինքնակամ սպանելոց ի մահուան հօրն՝ կը գանգատի նմա, թէ անմարդի աւար գերկիրն, և վասն այսր անիծելով զնա Արտաշէս կը գուշակէ, թէ որսի ժամանակ բռնուելով ի դիւաց պիտի տարուէր ի Մասիս և անդէն պիտի մնար յանլոյս բանտի։—«Զսմանէ երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս, եթէ ի մահուանն Արտաշիսի բազում կոտորածք լինէին ըստ օրինի հեթանոսաց. դժուարի, ասեն, Արտաւազդ, ասելով ցհայրն. Մինչ դու գնացեր և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս ո՞րպէս թագաւորեմ։ Վասնորոյ անիծեալ զնա Արտաշիսի ասաց այսպէս, եթէ Դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս, անդ կացցես և զլոյս մի տեսցես» (Խոր. Բ. ԿԱ)։ Զայս հաստատելու համար Խորենացին կը բերէ պառաւական զրոյց մի, թէ Արտաւազդ շղթայակապ արգելուած է այրի ուրեք, և երկու շունք անդադար կը կրծեն շղթաներն, որպէս զի ազատի և երթայ տալ վախճան աշխարհի. բայց դարբնաց կռաններուն ձայնէն կը զօրանան շղթայքն։ Այս առասպելին հաւատալով՝—ասէ Խորենացին—առ իւրով իսկ ժամանակաւ սնապաշտ դարբինք կիրակի օրեր երիցս և չորիցս կը բախէին սալը։—«Զրուցեն զմանէ և պառաւունք, եթէ արգելեալ կայ (Արտաւազդ) այրի միում, կապեալ երկաթի շղթայիւք, և երկու շունք հանապազ կրծելով զշղթայսն՝ ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի. այլ ի ձայնէ կռանարկութեան դարբնաց զօրանան, ասեն, կապանքն։ Վասն որոյ և առ մերով իսկ ժամանակաւ բազումք ի դարբնաց, զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ» (Խոր. Բ. ԿԱ)։ Ասելն Եզնկայ, թէ «Մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցապաշտս Հայոց, եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, և նա ելանելոց և ունելոց է զաշխարհս»—կ՚ակնարկէ վերոյիշեալ առասպելը սակաւ ինչ տարբեր։ Եզնկայ այս տեղեկութիւնն չմարթի լինել ի Խորենացւոյն որ յետոյ է քան զնա, այլ է անշուշտ ազգային ինչ աւանդութենէ։ Այսպիսի ինչ աւանդութիւն, բաց ի վերոյիշեալ առասպելէն՝ կը յիշէ Խորենացին և կը բերէ վկայութիւն դարձեալ յերգոց վիպասանաց. «Այլ ոմանք ասեն և ի ծնանելն զսա դիպեալ պատահարաց իմն. զոր համարեցան կախարդել զսա կանանց զարմիցն Աժդահակայ, վասնորոյ զնոսա բազում չարչարեաց Արտաշէս։ Եւ զայս նոյն երգիչքն յառասպելին ասեն այսպէս, եթէ Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ և դև փոխանակ եդին»։ Առաւել ողջամիտք սակայն առ

Խորենացւով կը համարէին զԱրտաւազդ մոլեգին ի ծնէ, և այն մոլեգնութեամբ կորեաւ իսկ.—«Բայց ինձ արդարացեալ թուի լուրն այն, թէ ի ծննդենէն և եթ մոլութեամբ լեալ, մինչ նովիմբ և վախճանեցաւ» (Խոր. անդ)։

**2**. Ցամէն 82 մինչև 107, այն է յերկրորդ ամէն Դոմետիանոսի մինչև ցիններորդ ամն Տրայիանոսի՝ չկար ամենևին վէճ Հայաստանի համար ի մէջ Պարթևաց և Հռոմոց, մինչ յաջորդն Դոմետիանոսի կարճակեացն Ներուաս (96—98) զբաղեալ էր ներքին ուղղութեամբք, և յաջորդ նորա Տրայիանոս (98—117) Դակաց դէմ պատերազմներով։ Ուստի և ի Հայս կը թագաւորէին որդիք Տրդատ-Արտաշիսի, Արտաւազդ և Աշխադար (82—108)։ Պարթևք, որոց նպատակն էր միշտ հանել զՀռոմայեցիս յԱսիոյ, մանաւանդ ի Հայոց և ի Միջագետաց՝ կը ջանային միշտ այս երկու երկիրներն կապել սերտիւ ընդ իւրեանս, տալով նոցա թագաւոր ի մօտաւոր ազգականաց իւրեանց։

**3**. Խոսրով Ա. (Արշակ ԻԵ, 108—121) արքայ Պարթևաց տեսնելով, ինչպէս կ'երևի, զթագաւորն Հայոց զԱշխադար (ըստ Գաթըրճեանի՝ որդի և ոչ թոռն Տրդատ-Արտաշիսի) միտեալ ի Հռոմայեցիս ըստ սկզբան հօրն՝ մերժեց զնա յաթոռոյն և տուաւ զՀայս իւր եղբօրորդւոյն Պարթամասիրայ (109)։ Տրայիանոս չհաճեցաւ այս փոփոխութեան, մանաւանդ որ հպարտ Հռոմայեցին չէր համարէր արժանի՝ թագաւորութիւն կոչել զՀայս, այլ լոկ իբրև գաստակերտ (աւատ) հռոմէական պետութեան, և ունէր ի մտի, բառնալու համար Պարթևաց ակնկալութիւնն ի սպառ՝ առնուլ զինքնօրէնութիւնն ի Հայոց և ի Միջագետաց, որ բաժանեալ էր ի բազում թագաւորութիւնս, և առնել զնոսա նահանգ։ Տրայիանոս կ'ստիպէր զԽոսրով կոչել յետս նոր թագաւորը և թողուլ զԱշխադար իւր բախտին։ Խոսրով չանսաց, և Տրայիանոս յետ իսպառ յաղթելոյ Դակաց յարևմուտս՝ որոշեց դարձուցանել իւր զօրութիւնն յարևելս։ Տրայիանոս կը պատճառէր Հայաստանի խնդիրը, բայց բուն դիտաւորութիւնն էր ստանալ համբաւ աշխարհակալի, ըստ օրինակին Աղեքսանդրի նուաճելով զարևելս մինչև ի Հնդիկս։ Բանագնացութիւնք Հայոց համար արդէն սկսած էին, մինչ Տրայիանոս (որ կը գտնուէր ի Փոքրն Ասիա, 114) սկսաւ մեծ պատրաստութեամբ խաղալ ի վերայ Հայոց, մերժելով զդեսպանս և զընծայս Խոսրովու, որ կը խնդրէր կայսրէն հաստատել զՊարթամասիր ի թագաւորութիւն Հայոց փոխանակ Աշխադարայ։ Մերժեց գոռոզ Հռոմայեցին զխնդրուածն ասելով. «Հանդէս բարեկամութեան ի գործոց է և ոչ ի բանից»։ Տրայիանոս մտաւ ի Մեծ

Հայս մինչ Կարնոյ կողմը, և չանսալով մեղմեխանաց Պարթամասիրայ, որ հրեշտակօք կ'աղաչէր զկայսր տալ նմա զթագաւորութիւն Հայոց՝ կոչեց զնա առաջի իւր։ Պարթամասիր հանելով թագը՝ դրաւ աթոռին աստիճաններուն վրայ, յուսալով թէ կայսրը պիտի դնէր զայն միւսանգամ ի գլուխ նորա։ Բայց զօրքը տեսնելով թագաւորը մերկ ի թագէն կայսեր առջև, այնպէս ուժգին աղաղակեց՝ որ Պարթամասիր սոսկացեալ կամէր խոյս տալ, բայց լեալ ձերբակալ՝ ասէ համարձակութեամբ ցկայսր, թէ եկած էր առ նա ոչ իբր կալանաւոր, այլ ինքնակամ ի կոչ նորա, յուսով առնլոյ զթագն ի ձեռաց կայսեր։ Տրայիանոս պատասխանեց. «Զունիմ ի մտի տալ այլ ևս զՀայս իբրև թագաւորութիւն, այլ առնել նահանգ հռոմէական», ինչպէս կը պատմէ Դիոն Կասսիոս։ Այսպէս երկիրն, ուր կը բխեն ակունք Եփրատայ և Տիգրիսի (Բեգդէր)՝ փոխուեցաւ ի նահանգ հռոմէական (115), և ելաւ հրաման Հայոց՝ մնալ իւրաքանչիւր յիւր երկրին։ Պարթամասիր մերժեալն, ինչպէս կը կարծուի, կամելով ընդդիմանալ պատերազմաւ՝ սպանուեցաւ ի ճակատու։ Ապա առանց դժուարութեան հնազանդեցան յաղթողին բովանդակ անդրկովկասեան Ասիա, այն է Կողքիս, Վիրք, Աղուանք և ասիական Սարմատք։ Հռոմայեցի պահապան զօրք դրուեցան ի քաղաքս և ի բերդս Հայոց. սակայն Տրայիանոս համօրէն զօրութեամբն խաղաց ի Միջագետս, ուր նուաճեցան և եղան նահանգ մանր մանր իշխանութիւնք և քաղաքք—Ուռհայաստան, Ադիաբեն, Մծբին։ Զօրքը ձմերելով ամուր ամուր տեղեր ի Հայս և ի Միջագետս՝ կը պատրաստուէր մեծ արշաւանին յաջորդ տարւոյն համար (116)։ Տրայիանու փափաքն էր նուաճել Բաբելոն, կործանել Պարթևաց մայրաքաղաքը և տեսնել Հնդկաց ովկիանոսն. ուստի ի սկզբան գարնան անցնելով ընդ Տիգրիս՝ մտաւ Պարթևաց ձմերոցն ի Տիզբոն, ուր ողջունեցաւ լեգէոններէն «Ինքնակալ Պարթևական» (Imperator Parthicus), ինչպէս կը վկայէ դահեկանն, ի միում կողման գլուխ Տրայիանոսի և ի միւսումն յաղթական նշանք պարթև զինուք, ի ներքոյ երկու Պարթև կալանաւորներ և գիր՝ «Պարթևաստան առեալ» (Parthia capta)։ Հոն հպարտ ազգն Պարթևաց թողուց հռոմայեցի յաղթողին՝ դնել յիւր վերայ նոր թագաւոր զորդին Աշխադարայ, զթշնամին Խոսրովու զՊարթամասպատ, որ և կորոյս աթոռը՝ երբ Տրայիանոս ստիպուեցաւ դառնալ յետ, և ժողովուրդն ի Հռոմ պարծանօք տեսաւ զդահեկան Տրայիանոսին իւրոյ, ի միում կողման զՏրայիանոս նստած յատենի իբրև դատաւոր աշխարհի, հռոմայեցի զօրավար մի առընթեր, Պարթևն առաջի նորա ի գուճս ձեռնամած, և գիր

ի լուսանցս՝ «Թագաւոր տուեալ Պարթեւաց» (Rex Parthis datus)։ Իրենց դուռները բացին առաջի յաղթողին՝ Անթեմուսիա եւ Բաթնէ քաղաքները, ինչպէս նաեւ յունական քաղաքն Սելեւկիա եւ ապա Տիզբոն, ուր առնուեցաւ գերի դուստր փախուցեալին Խոսրովու եւ Պարթեւ թագաւորաց աթոռն ի ձուլ ոսկւոյ, որոյ առաջի ի գետին խոնարհած էին այնչափ զօրաւորներ։ Յետ այսչափ յաղթութեանց, ասէ Դիոն Կասսիոս, ցանկացաւ կայսրն (117) տարմղեալ ըստ օրինակին Աղեքսանդրի, որում կը փափաքէր լինել նմանող՝ նաւարկել մինչեւ ի Կարմիր ծով։ Կը պատմուի թէ ի տեսիլ Ովկիանու եւ նաւի որ կ'երթար ի Հնդիկս՝ Տրայիանոս գոչեց. «Եթէ էի մանուկ (սակայն էր յայնժամ 64 ամաց)՝ երթայի ի Հնդիկս»։ Ի Հռոմ, յափշեալն այսչափ աշխարհակալութեանց վրայ՝ կը պատրաստուէին ձաղանք, բայց Տրայիանոս փոխանակ խորհելու ի Հնդիկս արշաւել՝ կը տեսնէր մօտ զիւր վախճան, եւ մինչ կ'զբաղէր նա միտ դնել զարմանալի հոսանաց, ուր միացեալն Տիգրիս եւ Եփրատ կը թափին յՈվկիանոս՝ ի թիկանց նորա կը յանձնէին ապստամբութիւնք քաղաքաց եւ ազգաց մի զմիոյ կնիք։ Բոլոր Անթեմուսիան ընդվզեալ՝ հազիւ արկաւ միւսանգամ ընդ լծով։ Սելեւկիա, յետ հալածելոյ իւր հռոմայեցի կուսակալներն՝ առնուելով վերստին մատնեցաւ ի սուր եւ ի հուր։ Մինչ զօրավարք կայսեր այսպէս ապստամբութեանց դէմ կը մաքառէին նոր նուաճեալ երկրին այլեւայլ մասերուն մէջ եւ ծերացեալն Տրայիանոս կը փութար տենդոտ երկրէն հիւանդագին դառնալ յԻտալիա՝ հասաւ նմա օրհասն ի Սեղինոս (յետոյ Տրայիանուպոլիս) Կիլիկիոյ յամին 117, թողլով զաէրութիւնն Ադրիանոսի։

Այսպէս կը պատմէ Դիոն. «Յետ այսորիկ (այսինքն յետ յանդ հանելոյ զպատերազմն Դակաց, տալոյ պատուհասել զթշնամիս իւր եւ զարդարելոյ զՀռոմ շինուածովք) ձեռն արկ (Տրայիանոս) արշաւել ի վերայ Հայոց եւ Պարթեւաց, պատճառեալ թէ թագաւորն Հայոց փոխանակ ընդունելոյ զթագն ի նմանէ՝ առեալ էր յարքայէն Պարթեւաց. այլ արդեամբ կամէր հաճել զիւր սնապարծութիւն։ Ի ժամանակի արշաւանացն ի վերայ Պարթեւաց հասեալ նորա յԱթէնս՝ հանդիպէր անդ հրեշտակացն առաքելոց ի Խոսրովայ, որոց եկեալ էր խնդրել խաղաղութիւն հանդերձ ընծայիւք պատարագաց։ Լուեալ Խոսրովու, եթէ Տրայիանոս յուղի անկեալ գայր կատարել զսպառնալիս իւր արդեամբ՝ զահի հարաւ, եւ իջեալ ի հպարտութենէն առաքէր աղաչել զնա չտալ ընդ նմա պատերազմ. խնդրէր ի նմանէ զՀայս վասն Պարթամասիրայ որդւոյ Բակրոյ եւ աղաչէր յղել առ նա լթագ. քանզի, ասէր, Աշխադարայ

ցուցեալ անարժան գնացս ընդդէմ Հռոմայեցւոց և Պարթևաց՝ ար-կեալ էր յաթոռոյն ի ձեռն նորա։ Տրայիանոս չընկալաւ զպարգևս նորա և ոչ ետ նմա ո՛չ բանիւ և ոչ գրով պատասխանի, բայց միայն՝ թէ բարեկամութիւն ճանաչի ի գործոց և ոչ ի բանից, ուստի և ի գալ իւրում յԱսորիս՝ արասցէ որ ինչ արդարն է։ Պըն-դեալ նորա յայս խորհուրդ՝ դէմ եդ երթալ ի Սելևկիա ընդ Ասիա, ընդ Կիլիկիա և ընդ աշխարհս սահմանակիցս։․․ Հնազանդեցուցեալ զամենայն առանց կռուոյ՝ եկն ի Սատաղ և մինչև յԵկեղեաց, և պատուհասեալ զՊարթամասիր արքայ Հայոց՝ նուաճեաց զՀայս։ Պարթամասիր գրէր ի սկզբան իբրև թագաւոր առ Տրայիանոս. իբրև չընկալաւ պատասխանի՝ գրեաց միւս ևս թուղթ, ուր եբարձ զթագաւորն անուն, և խնդրէր ի նմանէ առաքել զՅունիոս կու-սակալ Կապադովկացւոց, որպէս թէ շնորհս ինչ ունիցի խնդրել ի նորա ձեռն։ Տրայիանոս առաքէր առ նա զորդին Յունեայ, և ինքն չու արարեալ մինչև ի Սամոսատ զոր առ առանց պատերազմի՝ եկն անտի դարձեալ ի Սատաղ։ Յեկեղեաց ընկալաւ զՊարթամա-սիր։ Տրայիանոս նստեալ էր յատենի առ եզերբ պատնիշին։ Պար-թամասիր տուեալ նմա ողջոյն՝ հան զթագն ի գլխոյն և եդ առ ոտս կայսեր և կայր յատին լռութեամբ առաջի նորա, և մնայր հրամանի՝ առնուլ այսրէն զթագն։ Իբրև զօրն եբարձ զաղաղակ մեծ, իբր այն թէ յաղթութիւն մեծ հանաւ ի գլուխ—քանզի տե-սանէին թագաւոր Արշակունի, որդի Բակրոյ, եղբօրորդի Խոսրովու՝ կանգուն առանց թագի առաջի կայսեր իբրև զգերի—զահի հարեալ Պարթամասիր՝ համարեցաւ ծաղր լեալ և կորուսեալ զանձն։ Դար-ձաւ յետ կոյս, որպէս թէ ի փախուստ մտաբերեցէ. այլ տեսեալ զանձն պաշարեալ՝ խնդրէր շնորհս չխօսել ի մէջ բազմութեան. ուստի մուծեալ ի վրան անդր կայսեր՝ չկարաց որում ցանկայրն հասանել։ Ելեալ բարկութեամբ արտաքս՝ ածաւ միւսանգամ ի բա-նակ անդր հրամանաւ Տրայիանու, որոյ ելեալ դարձեալ ի բեմն՝ հրամայէր նմա ասել առաջի ամենեցուն զինչ և կամիցի, զի մի անգէտ լեալ ուրուք խօսելոցն առանձինն՝ հանցէ համբաւ այլա-կերպ ի ճշմարտութենէ։ Առ այս բան ոչ կարացեալ ժուժել Պար-թամասիրայ՝ ի մէջ այլոց բանից զորս խօսեցաւ համարձակ՝ ասաց, եթէ ո՛չ յետ ի պարտութիւն մատնելոյ ի ճակատու և ո՛չ իբրև կալանաւոր եկեալ էր անդր, այլ ինքնակամ, հաւատացեալ թէ չէր կրելոց զրկանս, այլ ընդունելոց զթագաւորութիւն իւր՝ որպէս Տրդատն ընկալաւ ի Ներոնէ։ Տրայիանոս ամենայն բանից նորա ետ զպատշաճ պատասխանին. իսկ վասն Հայոց աշխարհին ասաց, եթէ չունէր ի մտի տալ զայն ումեք, այլ իբրև ստացուած Հռո-

մաքեցուոց՝ ունելոց էր երկիրն կուսակալ Հռոմայեցի. իսկ Պարթամասիրայ թոյլ ետ Տրայիանոս գնալ յո՛ և կամք իցեն նմա։ Արձակեաց զՊարթամասիր հանդերձ Պարթևօքն որ եկեալ էին ընդ նմա, եդեալ ընդ նմա պահապանս՝ չտալ թոյլ նմա խօսել ընդ ումեք և տալ մտաբերել ի խակութիւն. ետ ևս հրաման Հայոց որ ընդ նմա էին՝ մնալ յերկրին իւրեանց, զի էին այնուհետև ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց։... Տրայիանոս յետ դնելոյ պահանորդս ի դիպան դիպան վայրս Հայոց աշխարհին՝ եկն յԵդեսիա և անդ ետես զառաջինն զԱբգարոս... որոյ որդին Արբանդէս շահեցաւ զքարեկամութիւն կայսեր։... Ի մէջ այլ բազում պատուոց, որ տուան Տրայիանու ի ծերակուտէն՝ էր Ոպտիմոսն (ազնուագոյն) յորջորջումն։.. Յետ առնլոյ զՄծբին՝ կոչեցաւ և Պարթևական (Parthicus). այլ նա պարծէր Ոպտիմոսն յորջորջմամբ քան այլովքն ամենեքումբք, զի այս յորջորջումն զքարս նորա մանաւանդ քան զզէնսն առնէր յայտ։... Տրայիանոս ի գարնան եմուտ յերկիր անդր թշնամւոյն...։ Անց ընդ Տիգրիս և եկն ի Տիզբոն, որոյ առն ետ նմա առնուլ զԶօրավարն (Jmperator) անուն, և կրկին անգամ զանունն Պարթևական։.. Յառաջ մատուցեալ մինչև ցՈվկիանոս և տեղեկացեալ զբուսոյ բարուց ծովուն, ի տեսանելն նաւ մի որ երթայր ի Հնդիկս՝ ասէ. Երթայի և ես ի Հնդիկս՝ եթէ էի տակաւին մանուկ։... Ի Հռոմ, թող զայլ ինչ բազում՝ կանգնեցաւ նմա կամար ի հրապարակին, և լինէր պատրաստութիւն երթալ ընդ առաջ ի դարձին, հեռագոյն քան զոր մարթ էր. այլ նա չէր մտանելոց ի Հռոմ և ոչ գործել ինչ այնուհետև արժանի իւրոց արութեանցն առաջնոց, նա́ կորուսանելոց իսկ էր զարդիւնս նոցա։ Արդարև ի ժամուն զի նաւարկէր նա ի վերայ Ովկիանու և դառնայր այսրէն յարշաւանացն՝ խռովութիւնք ծագեցան ի մէջ ազգաց նուաճելոց, և յայտնի եղև ապստամբութիւնն. ոմանք արտաքսէին զպահանորդսն եդեալս ի նոսա, այլք սուր ի վերայ եդեալ կոտորէին զնոսա։ Լուեալ Տրայիանու զայս ամենայն մինչ էրն ի Բաբելոն՝ առաքէր զՂուսիոս և զՄաքսիմոս ընդդէմ ապստամբացն։ Մաքսիմոս սպանաւ ի ճակատու ուրեք. Ղուսիոս, թող զայլ յաջողութիւնսն՝ տիրէր Մծբնայ, առնոյր յարձակմամբ զԵդեսիա և տայր հրոյ ճարակ զքաղաքն։ Երիկիոս Կղարոս և Յուղիոս Աղեքսանդր առին զՍելևկիա և այրեցին»։

4. «Իսկ Տրայիանոս երկուցեալ, թէ գուցէ և Պարթևք դարձուսցեն կապարճս՝ փութացաւ տալ նոցա թագաւոր։ Հասեալ ի Տիզբոն՝ գումարէր յընդարձակ ուրեք դաշտի զամենայն Հռոմայեցիս և զՊարթևս որ գտան անդէն. ապա ելեալ ի բեմ մի բարձր

և խօսեալ բանիբուն ճարտարութեամբ զիւրոց յաղթութեանց՝ կացոյց թագաւոր Պարթևաց զՊարթամասպատ (զորդի Աշխադարայ թշնամւոյ նոցա, ըստ Գաթըրճեանի), որում եդ զթագն ի գլուխ։ Մինչ անցանէր նա ընդ Արաբիա՝... սկսաւ ախտն։ Այն ինչ կամէր միւսանգամ դարձուցանել զզէնսն ի վերայ Միջագետաց, տեսեալ զի ծանրանայր հիւանդութիւնն՝ եդ ի մտի դառնալ յԻտալիա ընդ ծով։ Այսպէս Հռոմայեցիք յետ նուաճելոյ զՀայս, զմեծ մասն Միջագետաց և զաշխարհին Պարթևաց՝ կորուսին զպտուղ և՛ վաստակոց իւրեանց և վտանգաց։ Պարթևք արկեալ զՊարթամասպատ ի թագաւորութենէն՝ առին միւսանգամ զազատութիւն իւրեանց։ Տրայիանոս հասեալ ի Սեղինոն Կիլիկեցւոց զոր Տրայիանուպոլիսն կոչեմք՝ յանկարծ փչէր զոգին, յետ կալոյ ի տէրութեանն զամս իննևտասն, զամիսս վեց և զաւուրս հնգետասան» (Դիոն ԿԸ.)։

Զարշաւանսն Տրայիանոսի կը յիշեն նաև Եւտրոպիոս և Սեքստոս Րուփոս լատին պատմիչք Դ. դարու։—«Տրայիանոս առ միւսանգամ զՀայս, զոր կալեալ էր Պարթևաց, և սպան (114) զՊարթամասիրիս որ ունէր զաշխարհն։ Ետ թագաւոր Աղուանից, հնազանդեցոյց զարքայն Վրաց, Սաւրոմատաց, Բոսփորայ, Արաբացւոց, Օսռհոյաստանի և Կողքսայ։ Տիրեաց աշխարհին Կորդուաց, Մարդաց և Մարաց։ Առնէր երիս նահանգս զՀայս, զԱսորեստան և զՄիջագետս» (Եւտրոպ. Ը. 3)։ «Տրայիանոս, որ յետ Աւգոստեայ ընդեաց զոյժ և զօրութիւն հռոմէական պետութեան՝ առ այսրէն զՀայս ի ձեռաց Պարթևաց և հան յարքայէն Հայոց Մեծաց զթագն և զգահ։ Ետ թագաւոր Աղուանից, արկ ընդ իշխանութեամբ Հռոմոց զազգս Վրաց, Բոսփորայ, Կողքիդայ, կալաւ զՕսռհոյաստան, զԱրաբիա և նուաճեաց զԿորդուացիս և զՄարկոմեդս (զՄարս Հայոց).. արար նահանգ զՀայս, զԱսորեստան և զՄիջագետս» (Սեքս. Րուփ. 20)։

Տրայիանոսի արշաւանաց վաւերական վկայ են այլևայլ յիշատակարանք։ Նախ դահեկանն, զոր ծերակոյտն տուաւ դրոշմել ի Հռոմ, «ի միում կողման Տրայիանոս նիզակաւ ի հանդերձ զօրականի, ի մէջ նշանաց Եփրատ և Տիգրիս գետոց. ընդ ոտիւք Հայաստան կապեալ շղթայիւք, շուրջանակի գրով՝ «Հայաստան և Միջագետք արկեալ ընդ իշխանութեամբ հռոմէական ժողովրդեան» (Գաթըրճ. Պատմ. Տիեզ. Բ. էջ 174)։ Երկրորդ՝ կոթողն Տրայիանոսի, ուր քանդակուած էին անցք Պարթամասիրայ։ «Ի կոթողի աստ, որ յետոյ անաւ ի շինութիւն կամարին Կոստանդիանոսի մեծի՝ ցայսօր նշմարի Պարթամասիր մօրուօքն առաջի Տրայիանոսի յանդիման զօրացն» (Անդ)։ «Կան նաև դրամք Տրայիանու, յորս է գիր

շուրջանակի՝ «Պարսկաստան առեալ». կամ «Տուեալ թագաւոր Պարթևաց» (Rex Parthis datus S. C.) և կամ «Թագաւորութիւնք սահմանեալք» հանդերձ պատկերաւ նորա, զի սահմանէ զթագաւորութիւնս.—ամենեքին յամէ 116» (Անդ)։

**5.** Ադրիանոս կայսր յաջորդն Տրայիանու (117—138) իսկ և իսկ թողուց իւր մեծ այլ փառասէր նախորդէն նուաճեալ երկիրներն, ընդ որս և զՀայս, առնելով դարձեալ զԵփրատ արևելեան սահման հռոմէական պետութեան, ինչպէս էր յառաջ։ Թագաւորք երկու ազգաց դարձան իրենց աթոռներն, Խոսրով (որում յաջորդեց Վաղարշ Բ. եբր Արշակ ԻԶ. 121—149) ի Պարթևացն և Պարթամասպատ ի Հայոցն (118—139)։ Այսպէս կը պատմեն Սեքստոս Ռուփոս (դար Դ), Եւտրոպիոս (դար Դ) և Սպարտիանոս (դար Դ)։ «Ընդ փառսն Տրայիանոսի նախանձեալ Ադրիանոս յաջորդ նորա՝ իւրովք կամօք տայր հրաման զօրացն Հռոմայեցւոց դառնալ յետս. թողոյր զՀայս, զՄիջագետս և զԱսորեստան, և ի մէջ Հռոմոց և Պարթևաց զԵփրատ դնէր միւսանգամ սահման» (Սեքս. Ռուփ. Ի)։ «Նախանձեալ ընդ փառս Տրայիանու առաջնոյն իւրոյ՝ անդէն թողոյր զերեսին գաւառսն, զորս Տրայիանու արարեալ էր նահանգ, և կոչեաց զզօրսն յԱսորեստանէ, ի Միջագետաց և ի Հայոց, և կամէր զի սահման տէրութեանն լինիցի Եփրատ» (Եւտր. Ը. 7)։ «Ադրիանոս զՊարթևս կալաւ միշտ ի բարեկամութեան, զի կոչեաց յետս զթագաւորն զոր եդեալ էր ի վերայ նոցա Տրայիանոս։ Թոյլ ետ Հայոց ունել թագաւոր, մինչ առ Տրայիանոսիւ կուսակալ և եթ ունէին նոքա» (Սպարտ. Ի)։ Այս թագաւորը կը թուի թէ էր Պարթամասպատ որդի Աշխադարայ, ինչպէս ունի Գաթըրճեան։

**6.** Առ Անտոնինոսիւ Պիոսիւ (138—161) յաջորդաւ Ադրիանոսի՝ թագաւորեց Պարթևաց Վաղարշ Բ. (Արշակ ԻԶ. 121—149) յաջորդ Խոսրովու, և Հայոց՝ ի նմին Անտոնինոսէ կամ հրամանաւ նորա՝ Աքեմենիդ (140—159), որպէս թուի որդի Պարթամասպատայ, ըստ Բաբելոնական անուանեալ վիպասանութեան Յամբղիկոսի ուրումն ժամանակակցի ասորւոյ ի վերջ կոյս Բ. դարու առ Փոտայ (Գաթըրճ. Պատմ. տիեզ. Բ. 174, ծան. 6)։ Թէպէտ Աքեմենիդայ անունը չունինք այլուր յայտնի՝ ունինք սակայն դահեկան Անտոնինոսէ Պիոսէ յամէն 140—143, ուր կը տեսնուի Անտոնինոս որ կը պսակէ թագաւոր Հայոց։ «Գտանեմք վասն դիպացս այսոցիկ դրոշմեալ դահեկան, յորոյ ի միում կողմանն կայ. Անտոնինոս հիւպատ երրորդ անգամ, Աւգոստոս (Antonius Cos. III. Augustus), և ի միւսումն կողման դնէ թագ ի գլուխ Հայոց թագաւորին ինքնին կայսր, կացեալ կանգուն պճղնաւորաւ և շուրջա-

նակի գիր՝ «Տուաւ թագաւոր Հայոց. Հր. Ծերակուտին». (Rex Armeniis (կամ Armeniac) datus S. C.), դրոշմեալ յամէ 140—143» (Գաթրըճ. անդ)։

Վաղարշ էր բարեկամութեամբ ընդ Անտոնինոսի, առ որ ղըրկեց պսակ ոսկի, խնդրելով յետս ոսկեղէն աթոռը՝ զոր հանած էր ի Պարթեւաց Տրայիանոս։ Այսմ վկայ է Անտոնինոսի դահեկանն, յորոյ «ի միում կողմանն կայ գլուխն Անտոնինեայ և ի միւսումն կայ կանգուն կին Պարթև, որ ի ձախուն ունի աղեղն հանդերձ կապարճիւք, աջու ձեռամբն մատուցանէ պսակ ճաճանչաւոր (նշանակ արևելից). գիր շուրջանակի «Պարթևաստան. Հր. Ծերակ.» (Parthia S. C.) (Գաթրըճ. Պատ. Տիեզ. Բ. 175)։ Վաղարշ չհասաւ իւր խնդրոյն, քանզի, ինչպէս կը պատմէ Յուլ. Կապիտոլինոս որ գրեց ի վերջ կոյս Գ. դարու, այսինքն իբր 100 տարի յետոյ՝ «Անտոնինոս չառ յանձն տալ թագաւորին Պարթևաց զաթոռն ոսկեղէն, զոր հանեալ էր ի Պարթևաց Տրայիանոս» (Յուլ. Կապիտ. յԱնտ. Պի. Թ)։ Այս զլացումն, ինչպէս նաև թերևս դրուիլն Հայոց վրայ նոր թագաւոր առանց նորա հաճութեան՝ զայրացոյց զՎաղարշ այնպէս, մինչև խորհել նմա յարձակել ի Հայս, բայց կասեցոյց զնա Անտոնինոսի նամակն, ինչպէս ունի նոյն պատմագիր. «Թըղթով և եթ եղև բաւական դարձուցանել զթագաւորն Պարթևաց ի խորհրդոյն զոր ունէր յարձակելոյ ի Հայս» (Յուլ. Կապիտ. անդ)։

7. Վաղարշու Բ-ի այս խորհուրդն կատարուեցաւ (161—163) առ յաջորդաւ նորա Վաղարշու Գ. (Արշակ Իէ. (149—191), յետ մահուն Անտոնինոսի Պիոսի, առ յաջորդաւ նորա Մարկոս Աւրեղիոսիւ, կամ մանաւանդ առ Ղուկիոսիւ Վերոսիւ աթոռակցաւ նորա (161—169), մինչ կը թագաւորէր Հայոց Աքեմենիդայ որդին Սոյեմոս (159—169)։ Խոսրով զօրավար Վաղարշու մտաւ ի Հայս։ Սոյեմոս խնդրեց իսկոյն օգնութիւն Սևերիանոսէ կուսակալէ Կապադովկիոյ։ Պատերազմն եղաւ ի գաւառին Եկեղեաց, ձախող և՛ Հռոմայեցւոց և՛ Պարթևաց։ Սոյեմոս զերծաւ ի Հռոմ, ուր առաւ սենեկապետութեան պատիւ։ Մեռած էին երկոքին զօրավարք, Սևերիանոս ի ճակատու և Խոսրով ի բանտի, քանզի անկաւ գերի։ Մեծ էր սակայն Հռոմայեցւոց կորուստը, և յաղթութիւնն հանդերձ Հայաստանիւ էր ի ձեռս Պարթևաց (161—162)։ Զայս պատերազմ գիտէ Ղուկիանոս ժամանակակից (Վասն պատմագր. ԻԱ. ԻԵ.)։

Պարթևաց արշաւանին, Հռոմայեցւոց բեկման և Հայոց ի Պարթևաց նուաճուելուն լուրն հասաւ ի Հռոմ։ Իրար անցան Հռոմայեցիք, և հարկ եղաւ Ղուկիոսի Վերոսի, դիտմամբ արշաւելոյ ի Պարթևս՝ գալ յարևելս անձամբ։ Յուլիոս Կապիտոլինոս (դար Գ.)

բուական ընդարձակ կը պատմէ Ղուկիոսի այս արշաւանն, որ երկրորդն է յետ արշաւանին Տրայիանու։ Ըստ Յուլիոսի՝ Վաղարշու յարձակման նշաւակ եղած էին ոչ Հայք միայն և Կապադովկիա, այլ և Ասորիք.— «Զայնու ժամանակաւ եղև Պարթևաց պատերազմն զոր Վաղարշ, որ պատրաստեալ էր յայն առ Անտոնինոսիւ Պիոսիւ՝ ետ ընդ մեզ առ Մարկոսն Աւրեղիոսիւ և առ Վերոսիւ, յետ փախստեայ հանելոյ զԱնդիտիոս Կոռնեղիանոս, որ կուսակալ էր յայնժամ Ասորւոց։ Վերոսի եղև յանձն պատերազմն հաւանութեամբ ծերակուտին, և հաստատեցաւ ի խորհրդեանն՝ մնալ Անտոնինոսի ի Հռոմ, ուր հասարակաց իրք պահանջէին կալ նմա անդէն։ Բայց և այնպէս յուղարկէր նա զՎերոս մինչև ի Կապուա, թողեալ նմա ընկեր զոմանս ի սինկղիտիկոսաց զիւր բարեկամս, և յաւել ի նոսա արս գլխաւորս յամենայն գործակալութեանց։ Այլ ի դարձին ի Հռոմ իմացեալ, եթէ Վերոս հիւանդացեալ էր ի Կանուսիոն՝ անկաւ յուղի երթալ տեսանել զնա, յետ դնելոյ ուխտս յանդիման ծերակուտին վասն առողջութեան նորա։ Իբրև լուաւ, եթէ անկեալ էր նա միւսանգամ ի ճանապարհ՝ եկն այսրէն ի Հռոմ, ուր իսկ և իսկ կատարէր զուխտսն։ Վերոսի հասեալ յԱսորիս՝ հատանէր յանառակութիւնս։ ՅԱնտիոք և ի Դափնէ կրթէր զանձն ի գտեմարտիկ կռիւս և ի գազանամարտի։ Զպատերազմն Պարթևաց մղեաց ի ձեռն զօրավարաց իւրոց, և առնոյր զԻնքնակալն անուն։ Ի Հայս իրքն՝ յաջողէին ևս իմն առաւել ի ձեռն Ստատեայ Պրիսկեայ, որ առ զԱրտաշատ, և տուաւ երկոցունց կայսերացն ևս անունն Հայական։ Անտոնինոս ի սկզբան անդ առ համեստութեան չառնոյր յանձն զպատիւն, այլ յետուստ ուրեմն հաւանէր։ Ի վճարել ապա պատերազմին Պարթևաց՝ կոչեցան և Պարթևականք։ Անտոնինոս դարձեալ մերժէր զյորջորջումն, և ընդունէր հուսկ ուրեմն (Յուլիոս Կապիտ. ի Մարկ. Աւրեղ. Ը. Թ.)։ Զպատմութիւն արշաւանին Ղուկիոսի այսպէս կը համառօտէ Դիոն գրեթէ ժամանակակից. «Ղուկիոս էր յուժի և յաստիս մանկութեան և էր մէտ ի պատերազմ։ Վասնորոյ և Մարկոս Անտոնինոս, յետ փեսայացուցանելոյ զնա ինքեան, տալով նմա զդուստր իւր Ղուկիղղա՝ առաքեաց զնա մղել զպատերազմն ընդդէմ Պարթևաց։ Վաղարշ արդարև այն ինչ սկսեալ էր զպատերազմն, պաշարեալ յամենայն կողմանց լեգէոն մի ողջոյն հռոմայեցի, պահանորդ յամուր բերդին Եկեղեաց, ընդ հրամանատարութեամբ Սևերիանու։ Վաղարշ կորոյս ի կորովս նետիցն զլեգէոնն և զզօրավարս նոցա, նաև ոչ դադարէր արշաւել ի քաղաքս Ասորւոց, զորս առնէր ահաբեկս։ Ղուկիոս հասեալ յԱնտիոք առնէր համ-

դէս զօրուն, ունէր ընդ իւրով ձեռամբ բազում հազարս զօրավարաց, և կացեալ ի քաղաքի անդ կարգէր յարդարէր զպէտս պատերազմին և յանձն առնէր Կասեայ զբանակն։ Սա քաջութեամբ զդէմ կալեալ Վաղարշու և սարտուցեալ ի նմանէ զդաշնակիցս նորա՝ եղև նմա հետամուտ ի փախստեանն։ Խաղաց մինչև ի Տիզբոն, հրձիգ արար զՍելևկիա, և զապարանսն Վաղարշու կործանէր ի հիմանց։ Այլ ի դարձին կորոյս զբազումս ի զօրացն ի սովոյ և ի սրածութենէ և եմուտ յԱսորիս մնացորդօք բանակին» (Դիոն ՀԱ. 1, 2)։ Ձիարդ և իցէ՝ Հռոմայեցիք այս անգամ ևս թափեցին զՀայս ի Պարթևաց, և Սոյեմոս հաստատուեցաւ ի թագաւորութեանն ի Ղուկիոսէ Վերոսէ (169)։ Այս պատմութեան ևս վկայ են դահեկանք։ «Ի դահեկանսն Մարկոսի Աւրեղիոսի կայ ի միում կողմանն յետ անուան նորա՝ «Հայական» (Armeniacus) և ի միւսում կողմանն՝ կին մի նստեալ տրտում տխուր առաջի դրօշուն Հռոմայեցւոց, և ի ներքոյ գիր՝ «Հայաստան» (Armenia). դահեկանք արծաթիք յամէ 164, 165, 166։ Իսկ Ղուկեայ Վերեայ, բաց ի նոյնպիսեաց, յորս երևի դարձեալ Հայաստան ի կերպարանս կնոջ նստեալ տխուր ձեռն ի ծնօտին առ նշանի յաղթութեան Հռոմայեցւոց՝ կան և դահեկանք այսպիսի ինչ գրով, «Յաղթութիւն Աւգոստեայ, Հ. Ծ», և պատկեր դից Յաղթութեան և առ ոտսն նստի Հայաստան ի մէջ հայրենական զինուց, յեցեալ ի նաւ մի (յամէ 163 և 164). կամ ինքն Վերոս կացեալ կանգնէ նշան յաղթութեան և այր հայ կայ կըքեալ ի ներքոյ նշանին և առաջի կայսեր. (դահեկան պղնձի յամէ 165). կամ կայսր զնիզակն ճօճեցուցանէ ի վերայ առն հայոյ (յամէ 165), և կամ նստի կայսր ի գահոյսն իւր (sede curuli) և բակ առեալ կայ զօրականն, և ի միջի անդ կայ արքայն Հայոց, որում դնէ թագ ի գլուխ ինքնին կայսր Վերոս, և գիր շուրջանակի՝ թէ «Տուեալ թագաւոր Հայոց» (Rex Armeniis datus). դահեկան ոսկի յամէ 164 և արծաթի՝ յամէ 165» (Գաթըրճ. Բ. 176)։

**8.** Մինչ յետ մահուն Կոմոդոսի (180—192) յաջորդին Մարկոս Աւրեղիոսի, Պերտինաքս, Դիդիոս, Նիգեր, Աղբինոս և Սեպտիմոս Սևերոս կը կռուէին վասն կայսրութեան (191, 192), և Վաղարշ Գ. արքայ Պարթևաց (Արշակ ԻԵ, 149—191) յարեցաւ ի Նիգեր ի հակառակորդն Սեպտիմոսի՝ Սանատրուկ որդի Սոյեմայ, որ կը թագաւորէր յայնժամ ի Հայս (190)՝ մնաց չէզոք, չյարելով և ոչ ի մին ի նոցանէ։ Այսպէս Հերովդիանոս. «Նիգեր առաքէ խընդրել թիկունս օգնականութեան յարքայէն Պարթևաց և յարքայէն Հայոց և յարքայէն Ատրացւոց։ Արքայն Հայոց ետ պատասխանի,

*եթէ չկամէր օգնել ումեք, միայն ի մերձենալ Սեւերոսի հսկելոց էր ի պահպանութիւն երկրին իւրոյ։ Արքայն Պարթեւաց խոստացաւ Նիգերայ՝ տալ հրաման նախարարաց իւրոց գումարել զօրս. այսպէս առնել սովորութիւն է թագաւորաց աշխարհին ի սակսել նոցա տալ պատերազմ, քանզի չունին ընդ ձեռամբ իւրեանց զօրս ըստ օրինի զինուորեալս թոշակօք։ Իսկ արքայն Ադրացւոց առաքեաց առ Նիգեր գունդ աղեղնաւորաց ի թիկունս»* (Հերոդ. Գ. 1)։ *Առ Դիոնի ունինք զանուն թագաւորին Հայոց՝ Սանատրուկ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։*

Ո. *Առ Վաղարշու Դ.* (Արշակ ԻԸ, 191—209), *առ որով կը թագաւորէր Հայոց համանուն նորա Վաղարշ որդի Սանատրկոյ՝ Պարթեւք և Հայք միաբանելով արշաւեցին Հռոմայեցւոց երկիրներն, մինչ Սեպտիմոս Սեւերոս ի կռուի էր ընդ հակառակորդաց իւրոց* (193—197)։ *Այս կռիւներէն ետքը, Սեպտիմոս Սեւերոս լինելով յաղթող, վրէժ խնդրելու համար ի Պարթեւաց և ի Հայոց՝ եկաւ յարձակելու։ Պարթեւաց դէմ սկսաւ երրորդ արշաւանն Հռոմայեցւոց, այն է Սեպտիմոսի արշաւանն. Միջագետք գրաւեցան և Տիզբոն մատնուեցաւ յաւեր* (198)։ *Վաղարշ արքայ Հայոց որ յառաջագոյն խիզախէր ի պատերազմ ընդդէմ Սեւերոսի, զահի հարեալ ի մերձենալ նորա՝ ընծայիւք, պատանդօք և օգնական զօրօք հաշտեցուց կայսրը, որ ճանչցաւ զնա։ Այսպէս ունինք առ Դիովնի. «Սեւերոս յետ այսորիկ դարձոյց զզէնսն ընդդէմ Պարթեւաց, քանզի մինչ էր նա զբաղեալ քաղաքային պատերազմաւ՝ ժամ պատեհ համարեցան նոքա լինել տէր Միջագետաց, արշաւէին անդր անթիւ բազմութեամբ, և առնուին իսկ զՄծբին՝ եթէ չէր Ղետոս, որ զերծոյց զքաղաքն յորում ինքն իսկ պաշարեալ էր։ Պարթեւք ոչ կային մնային զալստեան կայսեր, այլ մեկնեցան յերկիր իւրեանց, և Սեւերոս օգնութեամբ նաւաց, զորս ետ շինել ի վերայ Եփրատայ՝ խաղացեալ յառաջ ընդ գետն և ընդ ցամաք առ ափամբքն՝ ոչինչ յամէր, բարւոք և արագ վարեալ զնաւսն, յորոց ի շինուածս անտառք առ Եփրատաւ լինէին նպաստ փայտից առատութեամբ — լինել տէր Սելեւկիայ և Բաբելոնի, զորս թողեալ էր Պարթեւաց։ Առնոյր և զՏիզբոն, զոր մատնէր յաւար զօրուն, և առնէր կոտորած մեծ ի քաղաքին, կալեալ կենդանւոյն իբրեւ հարիւր հազար այր։ Սակայն չեղև հետամուտ Վաղարշու և չեկաց ի Տիզբոն, այլ որպէս թէ արշաւան նորա ոչ վասն այլ իրիք էր, եթէ ոչ առ առնուլ զկողոպուտ քաղաքին՝ մեկնեցաւ ի բաց, և՛ վասն վայրացն անտեղեկութեան, և՛ առ ի չգոյէ կարեւորացն. ընդ այլ ճանապարհ դառնայր այսրէն, զի սպառեալ էր զպա-*

շարսն և զարօտս զօրս գտեալ էր զաւաջինն։ Ջօրքն անկան յաւ֊ ղի, ոմանք ընդ ցամաք առ Տիգրիսիւ, այլք նաւատորմղիւն։ Վաղարշ (արքայ Հայոց) որդի Սանատրկոյ, որ կանխաւ մատուցեալ էր ի պատերազմ ընդդէմ Սևերոսի՝ յառաջ քան զմտանելն ի կռիւ խնդրեաց և ընկալաւ հաշտութիւն խաղաղութեան։ Առաքեաց առ նա կայսրն հրեշտակս, և շնորհեցաւ նմա մի մասն Հայոց փոխանակ հաշտութեան» (Դիոն. ՀԵ. 9)։ Այսպէս ունի նա և Հերոդիգիանոս, միայն սա Հայոց հետ հաշտութիւնը յառաջագոյն կը դնէ քան զարշաւանն ի Պարթևս.—«Զկինելն Բարշամայ արքային Ադբացւոց դաշնակից Նիգերայ արարեալ պատճառս պատերազմի՝ խաղաց Սևերոս յարևելս։ Հասեալ անդր՝ համարեցաւ ժամ պատեհ դնել արշաւանս ի Հայս. այլ թագաւոր երկրին կանխէր առաքել նմա ոսկի, ընծայս մեծագինս և պատանդս, և խնդրէր զնիզակակցութիւն նորա և զբարեկամութիւն։ Հաճեալ Սևերոսի ընդ այնչափ նշանս հպատակութեան՝ խաղայր գնայր ի վերայ Ադբացւոց» (Հերովդ. Գ. 1)։

**10**. Սեպտիմոսի որդին Անտոնինոս Կարակալլա (211—217) նորոգեց պատերազմն ընդ Պարթևս առ Վաղարշու Ե. (Արշակ Լ. 209 - 216)։ Կարակալլա կամէր առնել նահանգ նաև զՀայս, ուստի կոչելով զՎաղարշ արքայ Հայոց բանտարկեց զնա (211)։ Հայք զայրանալով ընդդիմացան նմա պատերազմաւ և յաղթեցին։ Կարակալլա կամեցաւ առնել հաշտութիւն Պարթևաց հետ սա պայմանաւ, որ Արտաւանայ Ե-ի (Արշակ ԼԱ, 216 - 226), յաջորդին Վաղարշու Ե-ի, դուստրը տրուի նմա կնութեան, յուսալով այնու լինել ժառանգ պարթևական պետութեան, բայց չյաջողեցաւ, և կայսրն սպանաւ յաջորդ տարին (217)։

Այսպէս ունինք առ Դիոնի (մատենագիր Գ. դարու), որ յետ պատմելոյ այս կայսեր անառակութիւնը և բռնութիւններն՝ կը յաւելու. «Տեսցուք այժմ, թէ զիարդ գնայր նա ի պատերազմի։ Յետ նենգաւ հաւանեցուցանելոյ զԱբգարոս արքայ Ուռհայաստանի գալ տեսանել զնա իբրև բարեկամ՝ կալեալ կապէր զնա շղթայիւք, և այնպէս տիրէր երկրին որ մնացեալ էր անտերունչ։ Իսկ զթագաւորն Հայոց, որ էր գժտութեամբ ընդ իւր որդիս՝ կոչէր նոյնպէս առ ինքն գրով բարեկամութեան, պատճառանօք համոզելոյ զնոսա ի հաշտութիւն, և գնայր ընդ նմա որպէս գնացն ընդ Աբգարու։ Սակայն Հայք փոխանակ յարելոյ ի նա՝ ընթացան ի զէնս, և ոչ ոք այնուհետև հաւատայր նմա, մինչև ի միտ առնուլ նմա ի փորձոյ, թէ քանի վնասակար է առն թագաւորի վարել նենգութեամբ ընդ բարեկամս։... Թէոկրիտոս զօր առա-

*քեաց նա զօրօք ի վերայ Հայոց՝ մատնէր չարաչար ի պարտութիւն» (Դիոն. ՀԷ. 12, 21)։ Նոյն պատմիչ այլուր (ՀԸ. 1, 2, 3) յառաջ կը տանի պատմութիւնն այսպէս. «Յետ այնորիկ (այն է յետ պարտութեան իւրոյ ի Հայս) խաղացոյց զզօրս իւր ընդդէմ Պարթեւաց պատճառանօք, եթէ Արտաւան չառ յանձն տալ նմա զդուստր իւր, զոր կայսրն խնդրէր ի կնութիւն. (Արտաւան արդարեւ գիտէր քաջ, եթէ դիտաւորութիւն կայսերն էր բանիւ ածել զդուստր նորա ի կնութիւն, այլ արդեամբ ի բուռն առնուլ զթագաւորութիւնն Պարթեւաց)։ Անտոնինոս Կարակալլա աւերէր զմեծ մասն երկրին որ շուրջ զաշխարհաւն Մարաց, յարձակեալ մեծաւ սաստկութեամբ՝ կործանէր զպարիսպս, առնոյր զԱրբեղա, եւ բացեալ զգերեզմանս թագաւորաց՝ ցրուէր զոսկերս նոցա. զի Պարթեւք չեղեն նմա դիմադարձ, այլ խոյս ետուն ի լերինս յայնկոյս Տիգրիս գետոյ առ պատրաստելոյ զանձինս ի մարտ։... Պարթեւք եւ Մարք զայրացեալ, զի այնպիսի վիշտս ետ նոցա կրել՝ գումարեցին զօր բազում։ Զահի հարեալ կայսեր՝ ինքն եւս առնէր պատրաստութիւն, այլ ոչ ժամանեաց տալ պատերազմ, քանզի սպանաւ ի մէջ զօրացն, զորս մեծարէրն այնչափ եւ յորս կարի իմն վստահ էր»։*

**11.** *Յաջորդն Կարակալլայի Մակրինոս՝ ստիպեցաւ առնել հաշտութիւն ընդ Արտաւանայ, դրկեց նաեւ թագ առ Տրդատ Բ. որդի թագաւորին Հայոց Վաղարշու, որ մեռած էր ի բանտի* (216)։ *Այսպէս Դիոն. «Մակրինոս տեսեալ զԱրտաւան զայրացեալ յոյժ ընդ այնչափ վիշտսն որ անցին ընդ նա՝ յարձակեալ ի վերայ Միջագետաց բազմութեամբ զօրաց՝ առաքեաց նախ իւրովք իսկ կամօք զգերիսն բանիւք բարեկամութեան, հրաւիրեալ զնա առնել խաղաղութիւն, զպատճառս վնասուցն անցելոց արկեալ ի Կարակալլա. այլ Արտաւան փոխանակ ընդունելոյ զխնդիր նորա՝ պահանջէր ի նմանէ կանգնել միւսանգամ զամրոցսն եւ զքաղաքս կործանեալս, հանել զզօրսն ի Միջագետաց եւ առնել հատուցումն այլոց եւս վնասուց գործելոց եւ քանդելոյ շիրմաց թագաւորացն. եւ ապաւինեալ ի բազմութիւն զօրացն գումարելոց եւ արհամարհեալ զՄակրինոս իբրեւ աննշան ոք հասեալ յաւագութիւն՝ բրդէր ի ցասումն անհնարին եւ ակն ունէր զոր խնդրէրն առնուլ։ Մակրինոս առանց ինչ յապաղելոյ խաղայր ընդ առաջ թշնամւոյն որ եկեալ էր մինչեւ ի Մծբին, եւ ճակատ տուեալ եւ մատնեալ ի պարտութիւն՝ գնոց առնոյր զխաղաղութիւնն, բազում գանձիւք եւ պատարագօք շահեալ եւ՛ զԱրտաւան եւ՛ զաւագանին նորա։ Ոչինչ արգել զնա դադարեցուցանել եւ զթշնամութիւնն ընդ Հայս։ Հաճեալ Տրդատայ*

*(որդւոյ Վաղարշու)՝ ընկալաւ զԹագն, զոր առաքեաց առ նա Մակրինոս (218), առ զմայր իւր արգելեալ զամիսս մետասան ի բանտի ի Կարակալլայ, զաւարն հանեալ ի Հայոց և զկայուածս հօր իւրոյ ի Կապադովկիա» (Դիոն. ՀԸ. 26, 27)։*

**12.** *Բայց Պարթևաց տէրութիւնն հասած էր ի վախճան։ Ինչպէս յիշեցինք՝ Արտաւան Ե. չեղաւ ձեռնհաս նուաճել մեծ ապստամբութիւնը որ յարեաւ Թեկադրութեամբ Արտաշրի Սասանեանց, և հուսկ ուրեմն յետ ճակատուց ինչ Արտաւան սպանուեցաւ, ընկճեցաւ Պահլաւ ցեղն, և տիրեց Արտաշրիւ (226) Պարսիկ ցեղն, որ կոչեցաւ Սասանեան։*

**13.** *Յետ կործանելոյ Պահլաւ ցեղն ի Պարթևս՝ Արտաշրի առաջին գործն եղաւ ջանալ կործանել նաև զՀայոցն։ Արտաշրի և յաջորդաց նորա ջանքն ելին ի դերև, բայց և այնպէս Սասանեան հարստութեան սկիզբն ի Պարսկաստան՝ է դարագլուխ ի պատմութեան ոչ Պարսից միայն, այլ և Հայոց։ Բարեկամութիւնն որ կար ի մէջ Հայոց և Պարթևաց ի պատճառս ազգականութեան տիրող ցեղին իբրև Պահլաւ՝ փոխուեցաւ ի Թշնամութիւն, և Հայք միաեցին ի Հռոմայեցիս անդր, Թշնամիս Սասանեանց, որ կը ջանային ոչ միայն ջնջել Պահլաւ հարստութիւնն որ կը տիրէր ի Հայս, այլև մերժել հանել զՀռոմայեցիս յԱսիոյ։ Սասանեանց այս խորհուրդը չյաջողեցաւ։ Յետ ստէպ և անստոյգ պատերազմաց Հռոմայեցւոց ընդ Սասանեանս, ի պատերազմէն Աղեքսանդրի Սևերոսի (226) մինչև ի վերջին ճակատն Գաղերիոսի (297), և իբր 70-ամեայ շփոթութեան, կամ ըստ ազգային աւանդութեան (Ագաթանգեղոս) նոյնչափ ամաց անիշխանութեան ի Հայս՝ Պահլաւ հարստութիւնն Հայոց կը հաստատուի մեծաւ Տրդատաւ ի ձեռն Հռոմէական զօրութեան, քրիստոնէութիւնն կը մտնէ յաղթական ի Հայս դարձեալ հռոմէական ազդեցութեամբ, և իբր հարիւր ամօք յետոյ գիւտիւ Նշանագրին կ'սկսի փառաւոր մատենագրութիւն. քրիստոնէական քաղաքակրթութիւն կը զօրանայ ի ձեռն մեծարոյ քահանայութեան, Թագաւորութիւնը կ'առնու աւելի ազգային ձև, և պատմութիւնն, որ մինչև ցայն վայր էր օտար և հեթանոս աղբիւրներէ՝ կ'սկսի լինել տոհմային, որպէս ասացաւ այլուր։ Ահա փառաւոր սկիզբն, բայց վախճանը կը գտնենք տխուր։*

*Մեր կարճ պատմութեան մէջ զՍասանեանց՝ անցանք համառօտիւ զԱրտաշրէ, հիմնադրէն Սասանեան հարստութեան, Թէ ինչպէս կործանելով Պահլաւ ցեղն, որ իբր յերկերիւր ամաց հետէ (Արտաւանաւ Գ. 44) կը տիրէր Պարթևաց՝ նոր կրօնական, քաղաքային և զինուորական կարգօք հաստատեց տէրութիւնը, որ*

առ յաջորդօք նորա, մանաւանդ առ Շապհով Բ, առ Յազկերտիւ Ա. և առ Վռամաւ Ե. զօրացաւ այնպէս՝ մինչև սպառնալ բազմիցս հռոմէական պետութեան։ Յորմէ հետէ Հռոմայեցիք գտան մուտ յԱսիա՝ բոլոր արևելեան մեծ տէրութեանց—նախ Միհրդատայ հանդերձ Տիգրանաւ և ապա Պարթևաց, մերթ առանձինն և մերթ Հայոց հետ, ինչպէս նաև Սասանեանց—գլխաւոր ջանքն եղաւ զՀռոմայեցիս հանել յԱսիոյ։ Թէպէտ և ոչ բոլորովին, գէթ սաչափ միայն յաջողեցան, որ Հռոմայեցիք չկրցան իսպառ նուաճել զեր-կիրն անդր քան զԵփրատ. Միջադէտք մեծաւ մասամբ, որպէս և Հայք՝ մնացին տատանեալ ի մէջ այն երկու ազգաց, առաւելա-պէս, մանաւանդ Հայք՝ ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց։ Հայք, թէև ուրոյն թագաւորութիւն՝ չեղան կարող, երկրին դրից և ու-րիշ ներքին և արտաքին պարագաներու պատճառաւ, ունենալ անկախ գոյութիւն։ Լեզուի, սովորութեանց, թերևս նաև կրօնից մերձաւորութեամբ, առ Պահլաւ հարստութեամբ նաև տիրող ցե-ղին ազգականութեան պատճառաւ՝ Հայաստան միտեալ յիւր յարե-ւելեան դրացին մանաւանդ քան յարևմտեանն, բայց և ոչ միում յարեալ կատարելապէս (Տակիտոս)՝ առ Սասանեամբք (առ որովք եղաւ Հայաստան քրիստոնեայ) խզեց կրօնից և ազգականութեան կապը միանգամայն, ուստի և գրգռեց Սասանեանց ատելութիւնն իրեն դէմ. և թէպէտ աւելի սերտիւ կապեցաւ Հռոմայեցւոց հետ իբրև դաշնակից և կրօնակից և ազատեցաւ նոքօք քանի քանի անգամ Սասանեանց կողմէն սպառնացեալ վտանգէն՝ հուսկ ուրեմն հռոմէական ազդեցութեան տակաւ տկարանալովն յարևելս և ներ-քին երկպառակութիւններէ հիւծեալ՝ ի վախճանի անկաւ իսպառ ընդ իշխանութեամբ երկու հին ոսոխ տէրութեանց։

**14.** Այս դժբախտ ճակատագրէն թելադրեալ՝ կը փորձուին ոմանք երբեմն քրիստոնէութեան ընծայել զանկումն մեր, որպէս թէ Հայք քրիստոնէութեան պատճառաւ էր որ եղան ատելի երկու դրացեաց ևս, Սասանեանց և Յունաց միանգամայն. Սասանեանց՝ իբրև քրիստոնեայ, և Յունաց՝ իբրև հերձուած արևելեան եկեղե-ցիէն, որոյ դուստր էր քրիստոնեայն Հայաստան։ Բայց պատճառք անկման Հայոց են պէսպէս, ներքին և արտաքին։ Ներքին պատ-ճառք են, որպէս ասացաւ՝ դիրք երկրին, որ առնէր զնա ասպա-րէզ անդուլ պատերազմաց ի մէջ երկու հակառակորդ տէրութեանց (Րիդդէր). սակաւութիւնն—«Եմք ածու փոքր և թուով յոյժ ընդ փոքու սահմանեալ» (Խոր. Ա. Գ), և աւատային (féodal) դրու-թիւնն։ Իսկ արտաքին պատճառք են՝ երկու դրացի մեծ տէրու-թեանց միոյն մոլեռանդութիւնն և միւսոյն յոռի քաղաքականու-

թիւնն։ Այնպէս որ եթէ Հայաստան մնար ևս հեթանոս՝ հաւանական է թէ կործանէր արաբական զօրութեննէն, ինչպէս եղաւ քան զնա շատ աւելի հզօր արևմտեան դրացին, նաև կ՚ընկղմէր ի նմա կրօնիւ, ինչպէս եղաւ միւս դրացին, արևելեանն. մինչ քրիստոնէութիւնն իբրև եկեղեցի՝ տուաւ գրեթէ բարբարոս Հայուն ոչ միայն լինել մասնակից քրիստոնէական քաղաքակրթութեան, այլև ունել միութիւն՝ որմէ զուրկ էր և յորոյ ի շնորհս հայ ցարգ և կը շնչէ։

**15.** Դնելով այս դրութիւնը՝ գանք այժմ բուն պատմութեան ըստ Դիոնի, որ Աղեքսանդր Սևերոսի (222—235) վերջին տարին հրաժարեցաւ քաղաքական գործերէ, ուստի և էր ժամանակակից և ի մօտոյ տեղեակ։ Արտաշիր ի սկզբան տէրութեան իւրոյ (226) յարձակելով ի Հայս՝ տեսաւ ընդդիմութիւն մեծ յայնժամու թագաւորէն Հայոց, առ որ ապաւինած էին որդիք Արտաւանայ.—«Բազում ապստամբութիւնք յարեան (առ Աղեքսանդրիւ Սևերոսիւ) ի կողմանս կողմանս։ Էին որ թէպէտև սաստիկ յոյժ՝ ցածուցան. այլ անցք որ ի Միջագետսն անցին՝ էին ահաւորագոյն ևս և բաւական ի զարհուրեցուցանել զամենեսին, ո՛չ ի Հռոմ միայն, այլ և ի գաւառս։ Արդարև Պարսիկ ոմն Արտաշէս (Արտաշիր) անուն, յետ յաղթելոյ Պարթևաց յերիս ճակատս և սպանանելոյ զթագաւոր նոցա զԱրտաւան՝ խաղաց ի վերայ Ատրացւոց քաղաքին, առնել զնա տեղի ապաւինի արշաւանաց իւրոց ի վերայ Հռոմոց։ Կործանէր զբազումս ի պատուարաց քաղաքին, այլ կորուսեալ բազմութիւն մեծ զօրաց ի դարանի ուրեք՝ անցանէր ի Մարս, և գրաւեալ մերթ բռնութեամբ և մերթ երկիւղիւ զմեծ մասն երկրին, որպէս և աշխարհին Պարթևաց՝ գայր մինչև ի Հայս։ Անդ վանեալ վկանդեալ ի բնակաց երկրին և ի Մարաց ոմանց և յորդւոցն Արտաւանայ՝ ելանէր փախստեայ, որպէս ասեն ոմանք, կամ որպէս այլք ասեն՝ դառնայր յետս գումարել մեծ ևս բազմութիւն զօրաց» (Դիոն. գիրք Զ. 3)։ Թագաւոր երկրին հաւանականապէս էր այն, առ որ ըստ նմին իսկ Դիոնի, ինչպէս տեսանք վերագոյնն՝ ամօք ինչ յառաջ (218) Մակրինոս ղրկած էր թագ, այն է Տրդատ Բ, որդի Վաղարշու։ Չեն արդարև զարմանք, թէ որդիք Արտաւանայ ապաւինած էին առ Տրդատ Բ. կամ Խոսրով, և այնպէս սաստկութեամբ ընդդիմացան Արտաշրի. քանզի երկու թագաւորք, Տրդատ Բ. (ըստ ազգային աւանդութեան Խոսրով) և Արտաւան կը թուին լեալ մօտաւոր ազգականք, հաւանականապէս եղբարք իսկ։ Ագաթանգեղոսի «եղբայրութիւն ազգականութեան» և Եղիշէի նամակին «հօրեղբայր» բառերուն միայն նայելով՝ յառաջ-

նում մասին պատմութեան մերոյ (էջ 86, 87) ասացաք, թէ Արտաւան և Խոսրով էին եղբարք. կայ սակայն ուրիշ աւանդութիւն ազգային, որ յայտնի իսկ կը դնէ զԱրտաւան, զվերջինն Պարթև թագաւորաց՝ եղբայր Խոսրովու։ Այսպէս ունիմք ի յունարէնն Ագաթանգեղոսի. «Յետ մահուն Արտաւանայ, սպանելոյ յԱրտաշրէ յորդւոյ Սասանայ՝ այս գոյժ հասանէր առ Խոսրով արքայ Հայոց եղբայր Արտաւանայ, որ (Խոսրով) էր երկրորդ ի տէրութեանն Պարթևաց» (Ագաթ. Յուն. Գլ. Ա). և ի գիրսն Զենոբայ. «Ընդ ժամանակս թագաւորութեանն Խոսրովայ որդւոյ Վաղարշայ վրէժխնդիր լինէր (Խոսրով) Արտաւանայ եղբօր իւրոյ. և ի գոռալ երկուց թագաւորացն, արքային Հայոց և Պարսից՝ սաստկացաւ մարտ պատերազմին, և զօրացաւ արքայն Հայոց, և սկսաւ ապականել զերկիրն Պարսից ամս տասն... և եղև միջնորդ արքայն Ճենաց, և ոչ կարաց գրաւել զսիրտ նորա ի հաշտութիւն. այլ սովով և սրով հանէր (Խոսրով) զվրէժս եղբօրն իւրոյ զոր եսպան արքայն Պարսից» (Զենոբ, Պատմ. Տարօն. էջ 20, տպ. Վենետ. 1832)։ Արդարև ոչ Ագաթանգեղոսի յունարէն յաւելուածին և ոչ Զենոբայ կրնանք ընծայել կատարեալ հաւատարմութիւն. աւելի զօրաւոր է սակայն վկայութիւնն Ագաթանգեղոսի և Եղիշէի նամակին, եթէ այն նամակն է վաւերական, այսինքն գրուած բուն ազգին կողմանէ և ոչ գիւտ Եղիշէի պատմութիւնը գրողին. և այս երկու վերջինք, մանաւանդ նամակն՝ չեն հակառակ եղբայրութեանն Խոսրովու և Արտաւանայ։ Արդ որպէս ասացաք՝ Արտաշիր, ըստ Դիոնի, տեսնելով Հայոց և Մարաց միացելոց կողմանէ ընդդիմութիւն՝ կ'երթայ ժողովել նոր և աւելի զօրս յարևելեան սահմանաց Պարսից և կուտայ (230—234) պատերազմ ընդ Աղեքսանդրի Սեւերոսի, ընդ որում կը թուի թէ միաբան էին Հայք։

**16.** Սեւերոսի յաջողութեան վրայ միաբան չեն կարծիք հռոմայեցի պատմչաց։ Ըստ Լամբրիտիոսի (լատին պատմիչ իբր ժամանակակից, այսինքն 50 ամօք միայն յետոյ քան զՍեւերոս) Սեւերոս եղաւ յաղթող, թէպէտ Հերովդիանոս գրեթէ նոյնչափ յետոյ՝ կը պատմէ զհակառակն։ Կը դնենք հոս Լամբրիտիոսի պատմութիւնը, որ հաւանականագոյն կը թուի շատ կողմանէ. «Աղեքսանդր չուեաց մեծաւ պատրաստութեամբ ընդդէմ հզօր ազգին Պարսից և յաղթեաց արքային նոցա Արտաշրի։ Էր տեսանել զկայսր որ երթայր ի թևս իւրոյ բանակին, քաջալերէր զզօրսն, շրջէր ի ճակատու անդ ընդ նետիւք թշնամւոյն, ցուցանէր քաջութիւն զարմանալի և տայր բանիւքն ազնուական իմն եռանդն իւրաքանչիւր զինուորի։ Յետ յաղթելոյ և առնլոյ փախստեայ զհակառակորդն զայն ա-

հեղ, որ եկեալ էր ընդդէմ նորա եօթնհարիւր փղօք, հազար և ութհարիւր գերանդազէն կառօք և բազում հազարօք հեծելոց՝ Աղեքսանդր դարձաւ իսկոյն յԱնտիոք և մեծացոյց զզօրսն աւարօքն զոր առեալ էր ի Պարսից. զի տայր հրաման զօրապետացն և զինուորաց՝ պահել զոր ինչ առեալ էր նոցա յերկրէ անտի թշնամւոյն։ Յայնժամ զառաջինն տեսան կայանաւորք պարսիկք ի մէջ Հռոմայեցւոց։ Եւ զի Թագաւորք ազգին այնորիկ նախատինս մեծ համարին անձանց, եթէ հպատակք նոցա անկցին գերի՝ գնեցան գերեալքն արծաթոյ։ Աղեքսանդր զգինս փրկանացն թողոյր նոցա՝ որոց կալեալ էր զնոսա, զմասն ինչ միայն անտի առեալ ի գանձն։ Աղեքսանդր երթայր յետ այնորիկ ի Հռոմ, ուր կատարեաց նա մեծաւ շքով զձաղանսն և խօսեցաւ առ ծերակոյտն օրինակ զայս. (քաղուած ի դիւանէ անտի ծերակուտին, եօթներորդ աւուր կաղանդացն հոկտեմբեր ամսոյ). Ծերակոյտ Հռոմայեցւոց, յաղթեցաք Պարսից։ Երկայն ճառք աւելորդ են, պարտ է միայն գիտել ձեզ, թէ զինչ նոցա զօրութիւնն էր, որպիսի պատրաստութիւն նոցա։ Էին նոցա եօթն հարիւր փիղք, աշտարակօք բարձելովք աղեղնաւորօք և նետիւք։ Կալաք ի նոցանէ հարիւրս, երկերիւրք սպանան ի ճակատու անդ, ածաք այսր զութևտասանսն միայն։ Ունէին կառս գերանդիազէնս հազար. մարթ էր մեզ բերել ի նոցանէ երկերիւր, որոց երիվարք կորուսեալ էին, այլ չթուեցաւ մեզ կարեւոր, քանզի դիւրին է ցուցանել ձեզ այլս։ Յաղթեցաք հարիւր և քսան հազար հեծելոց և սպանաք ի պատերազմի անդ տասն հազար սպառազէն վառեալ, զորոց զզէնսն տուաք մերոց զինուորաց։ Կալաք զբազումս ի Պարսից զորս վաճառեցաք։ Նուաճեցաք զամենայն երկիրն որ միջոցի անդ երկուց գետոց, այն է զՄիջագետս, զոր կորուսեալ էր Հեղիոգաբաղայ։ Խորտակեցաք և արկաք ի փախուստ զԱրտաշիր, զահեղն և՛ զօրութեամբ և՛ համբաւով, և աշխարհն Պարսից ետես զնա փախստեայ, թողեալ զնշանսն անդէն ի տեղւոջն՝ ուր երբեմն կորուսեալ էր մեր զմերսն։ Ահա՛, ծերակոյտ Հռոմայեցւոց, զոր ինչ արարաք։ Չեն աստ պէտք ճարտարխօսութեան։ Զինուորք մեր գան մեծացեալ. յաղթութիւնն տայ մոռանալ զվաստակ։ Ձեզ անկ է արդ սահմանել աղերս պաղատանաց առ ի յայտ առնելոյ զշնորհակալութիւն մեր առ դիս։ Ծերակոյտն ետ պատասխանի ի ձայն ցնծութեան. Աւգոստէդ Աղեքսանդրէ, տեսանեմք զնշանս յաղթութեան ձերոյ, տեսանեմք և զյաղթութիւն ձեր։ Փա՛ռք մանուկ կայսեր մերում, հօր հայրենեաց, քահանայապետիդ մեծի։ Փա՛ռք մեզ, եմք ամենայն ուրեք յաղթող։ Վստահ ի յաղթել է նա՝ որ գիտէն հրամայել զօրուն։ Երանելի՜ է

ծերակոյտս, երանելի՜ զօրդ, երանելի՜ ժողովուրդդ Հռոմէական։— Աղեքսանդր յետ արձակելոյ զծերակոյտն՝ ել ի Կապիտոլիոնն, մատոյց զոհս դիցն և եդ ի մի մեհեանին պատմուճանս պարսիկս։ Ապա մատուցեալ առ ժողովուրդն՝ ասէ. Արք Հռոմայեցիք, յաղթեցաք Պարսից և ածաք այսրէն զզօրս մեր լի աւարօք։ Խոստանամք բաշխել ձեզ պարգևս. վաղիւ տացուք ի կրկէսի անդ խաղս պարսկականս։ Զայսոսիկ գտաք ի տարեգիրս և յայլ բազում մատեանս։ Բայց և այնպէս ոմանք ի մատենագրաց ասեն, եթէ Աղեքսանդր ոչ միայն չկարաց յաղթել արքային Պարսից՝ այլ և մատնութեամբ միոյ ուրումն ի գերելոց անտի՝ ստիպեցաւ, առ ի չմատնելոյ ի պարտութիւն՝ աճապարել ի փախուստ։ Այլ ասել զայս հակառակ բազմացն կարծեաց չէ մարթ նոցա, որոց անցեալ իցէ ընդ բազում մատեանս։ Քանզի, ասեն, Աղեքսանդր կորոյս զզօրսն ի սովոյ, ի ցրտոյ և ի հիւանդութենէ, որպէս Հերովդիանոսն պատմէ։ Աղեքսանդր լի փառօք, ընկերութեամբ ծերակուտին և կարգին ասպետաց, համօրէն ժողովրդեան և բազմութեամբ կանանց և մանկտւոյ, մանաւանդ կանանց զօրականին, գնաց հետի յապարանսն, մինչ կառք նորա յաղթական երթայր զկնի նորա, ձգեալ ի չորից փղաց։ Բարձեալ ի վերայ բազկաց բազմութեանն՝ հազիւ աբար (Աղեքսանդր) զկարճն զայն ճանապարհ ի չորս ժամս, մինչ ամբոխն աղաղակէր. Ողջ լիցի Հռոմ, զի ողջ է Աղեքսանդր։ Ի վաղիւն զկնի խաղուց կրկէսին և տեսլեանց ի թատերն՝ բաշխեաց կայսր պարգևս հռոմէական ժողովրդեան և ըստ օրինակին Անտոնինոսի, որ նուիրեալ էր ի յիշատակ Փաւստինեայ արծաթ ի սնունդ մանկանց և աղջկանց՝ Աղեքսանդր հաստատէր այնպիսի ինչ ի յիշատակ Մամեայ (մօր իւրոյ)։ Պատերազմն մատուցաւ յառաջ ի ձեռն Ցունեայ Պաղմատեայ» (Լամբր. յԱղեքս. Սևեր. 54—58)։ Զիարդ և իցէ՝ հաւանականագոյն է, թէ Արտաշիր յաղթուեցաւ ի Հայոց և ի Հռոմայեցւոց միացելոց, թէպէտ ոչ առանց մեծի վնասու այսց վերջնոց։

**17.** Աղեքսանդր Սևերոս կ'սպանուի (235), և մինչև 238՝ Մաքսիմինոս Թրակացի, երկոքին Գորդիանոսք, ապա Պուպիէնոս Մաքսիմոս և Բաղբինոս կ'սպանուին հետզհետէ, և կ'ընտրուի Գորդիանոս Գ. (238—244)։ Այս միջոցին, այն է 235—238՝ կը մեռնի Արտաշիր, մինչ կը պատրաստէր նոր յարձակումն ի վերայ Հայոց և Հռոմայեցւոց։ Բայց Հայք կը թուի թէ էին ազատ ընդ ազդեցութեամբ Հռոմայեցւոց և բարեկամ նոցա, քանզի առ Մաքսիմինոսիւ Թրակացւով (235—238) կը գտնենք զՀայս օգնական նիզակակից նմա ի պատերազմին ընդդէմ Գերմանաց (236).—Մաքսի-

մինոս «ածէր ընդ իւր ամբաւ բազմութիւն զօրաց, գրեթէ զհամօրէն գունդ Հռոմայեցւոց, որպէս և բազմութիւն մեծ աղեղնաւորաց յԱրուեստանէ, յՈւռհայաստանէ և ի Հայոց» (Հերովդ. Է. 5)։ Առ Շապհով Ա. (240—271) կ'սկսի թշնամութիւնն աւելի մեծ զօրութեամբ։ Շապուհ կը յարձակի (241) Հռոմայեցւոց երկիրներուն վրայ ի Միջագետս և յԱսորիս։ Մծբին կը պաշարուի և կ'առնուի յետ երկար և յամառ ընդդիմութեան։ Շապուհ կ'սպառնայ Անտիոքայ, կը խաղայ մինչև ի Կապադովկիա և ի Կիլիկիա։ Կը թուի թէ Հայաստան ևս չմնաց ազատ յարշաւանաց Շապհոյ, քանզի, ինչպէս պիտի տեսնենք յետոյ՝ Արտաշատ մայրաքաղաք Հայոց ինկած էր ի ձեռս Պարսից, երբ Գորդիանոս Գ. սկսաւ զիւր արշաւանն ընդդէմ Պարսից (243)։

**18.** Թէ ինչ եղաւ Տրդատ Բ. և ով յաջորդեց նմա՝ չունինք յիշատակութիւն առաջին ժամանակակից պատմութենէ։ 218-էն, որ է տարին յորում Տրդատ Բ. ընկալաւ թագ ի Մակրինոսէ յաջորդէն Կարակալլայի, մինչև ի գերութիւնն Վաղերիանոսի (260), կը գտնենք միայն յիշուած Տրեբեղղիոսէ Պողիոնէ, հռոմայեցի պատմագրէ ոչ հեռի ժամանակաւ՝ Արտաւազդ ոմն իբր թագաւոր Հայոց, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։ Գորդիանոսի արշաւանն ընդդէմ Պարսից յաջողեցաւ, ինչպէս կը պատմէ Յուլիոս Կապիտոլինոս գրեթէ ժամանակակից (այն է իբր 40 ամաւ յետոյ քան զԳորդիանոս).—«Գորդիանոս յետ բանալոյ զմեհեանն Յանոսի, (իբրև ի նշան թէ կայր պատերազմ առաջի)՝ խաղաց ի վերայ Պարսից այնպիսի ահեղ բանակաւ և այնչափ ոսկւով, մինչև մարթել օգնութեամբ դաշնաւորացն և իւրոյ զօրուն յաղթել ոգգին այնմիկ։ Անցեալ ընդ Միւսիա հարկանէր վանէր, զհետ մտեալ հալածէր զորս միանգամ թըշնամի էին նմա ի Թրակիա. ապա միջամուխ լեալ յԱսորիս՝ խաղայր ի վերայ Անտիոքայ, որ յայնժամ ի ձեռս Պարսից էր։ Անդ բազում ճակատս տուեալ յաղթէր, խախտէր զթագաւորն Պարսից Շապուհ. ապա զկնի Արտաշատու առնոյր զԱնտիոք, զԽառան և զՄծբին, քաղաքք, որ ընդ Պարսից իշխանութեամբ էին։ Թագաւորն Պարսից երկնչէր յոյժ ի Գորդիանոսէ, մինչև —թէպէտ գիտէր զիւր զօրութիւն և զմերն—հանել զզօրս իւր ի քաղաքաց մերոց և թողուլ զբնակիչս նոցա առանց իրիք վնասու և բռնութեան։ Այսպէս Պարսիկք, զորս երկիւղ էր տեսանել յԻտալիա՝ մտանէին յերկիր իւրեանց յահէ զօրացն Գորդիանու, և արևելք համօրէն լինէին միւսանգամ Հռոմոց։ Գորդիանոս ունի թուղթ առ ծերակոյտն օրինակ զայս. ԶԱնտիոք կորզեցաք ի լծոյ Պարսից։ Տուաք միւսանգամ հռոմէական պետութեան զԽառան և զայլ ևս քաղաքս։ Մա-

տեաք յառաջ մինչև ի Մծբին, և եթէ շնորհեսցեն մեզ դիք՝ երթիցուք մինչև ի Տիզբոն (Յուլ. Կապիտ. ի Գորդ. Գ, ԻԶ. ԻԷ)։

**19.** Գորդիանոս կ'սպանուի 244, և յաջորդ նորա Փիլիպպոս (244—249) ի դաշինսն ընդ Շապհոյ թողուց Պարսից զՄիջագետս և այսպէս մնաց առ յաջորդօք նորա, առ Դեկոսիւ (249—251) և առ Գաղոսիւ (251—253), որ զբաղեալ էին գոթական պատերազմներով և ներքին խռովութեամբք։ Յաջորդն Գաղոսի Վաղերիանոս (253—260) կու գայ յարևելս (259), բայց յաղթուելով կը բռնուի գաւով։

**20.** Այնուհետև Շապուհ առաւել ևս համարձակութիւն առնլով կը խաղայ Անտիոքայ վրայ և կը դարձունէ յաւեր զքաղաքն. բայց ի դարձին յետս, մինչ կ'անցնէր ընդ Եփրատ՝ Պալմիւրայի իշխանն Ոդենատոս կը զարնէ զնա չարաչար Ուռհայի մօտ, կ'առնու զՄծբին, կը վանէ զՇապուհ ի Միջագետաց և կը կոչուի ի Հռոմայեցւոց «Դուքս արևելից». բայց ինքն իւր առաջին յաղթութենէն հետէ առ Եփրատայ (260) կը կոչէր զանձն թագաւոր Պալմիւրայ» (Րիդդէր)։

Պալմիւրա, ըստ Արաբացւոց Թատմոր, անուանի քաղաք անապատին Արաբիոյ, ի մէջ Ասորւոց երկրին և Եփրատայ, Պալմիւրա, այսինքն արմաւենի կոչուած ի Հռոմայեցւոց իւր գեղեցիկ արմաւենիներուն պատճառաւ, մեծանուն և վաճառաշահ իւր սքանչելի դիրւքն իբրև ճանապարհ վաճառականութեան ի մէջ արևելից և արևմտից—կը կարծուի շինեալ ի Սողոմոնէ։ Ունեցաւ երկար ժամանակ փոքր իշխաններ, որ պահեցին զինքնօրէնութիւն իւրեանց մինչև Գ. դար, երբ եղան հարկատու Հռոմայեցւոց։ Այս իշխաններէն էր Ոդենատոս այս, որ մեծամեծ քաջութիւններ գործեց ոչ միայն Պարսից դէմ, ինչպէս պատմուեցաւ հոս, այլև երեսուն բռնաւորաց (ապստամբ իշխանք, որ առ Վաղերիանոսիւ, Գաղիենոսիւ, Կղաւդեաւ, Աւրեղեաւ, 253—270, եղան ինքնագլուխ հռոմէական պետութեան այլևայլ տեղերը) շատերուն դէմ, մինչև արժանի լինել առնուլ, ինչպէս ըսինք՝ «Դուքս» կամ «Զօրավար արևելից», նաև «Օգոստոս» տիտղոսը։ Այրին Ոդենատոսի Զենոբիա յետ մահուան առն իւրոյ առաւ անուն «Դշխոյ արևելից», բայց յարոյց իրեն դէմ Աւրեղիանու (270—275) երկրորդ յաջորդին Գաղիենոսի զէնքը։ Զենոբիա յաղթուելով ձաղեցաւ ի Հռոմ յԱւրեղիանոսէ. հանդերձ նորա կորեաւ նաև իշխանութիւնն Պալմիւրայ, որ եղաւ նահանգ հռոմէական յամին 272։ Պալմիւրայի հոյակապ աւերակները կան ցարդ, 245 հազարամէտր ի հարաւոյ արևելից Բերիոյ և 268 հազարամէտր ի հիւսիսոյ արևելից Դամասկոսի։ Կը պահեն

տակաւին Թատմոր անունը։ Ցամի 1691 եղան ծանօթ Եւրոպացւոց և նկարագրուած են գեղեցիկ ի Վոլնէյէ։ Հոս կը գտնենք երևելի մատենագրի մը խօսքը. «Ո՜րպիսի մեծ շահ օգտի կայր մնայր կողմանցն Եփրատայ՝ եթէ խաղաղութիւնն, որ եկն եա ընդ եօ զկնի, և իմաստունն վարչութիւն, որպիսի էր Պալմիւրայն, աւր վաճառականութիւն, արուեստք և գիտութիւնք էին ի ծաղկի՝ լեալ էին տևական, և չէր ի ձեռն Աւրելիանոսւ այնպէս արագ արագ ի վերայ հասեալ և՛ Զենոբիայ և՛ հոյակապ մայրաքաղաքին Պալմիւրայ կործանումն, որով ոչ միայն շողաւորն տեսիլ այն ինչ երևելոյ տէրութեանն յանկարծ ի մառն մտանէր, այլ և համօրէն արուարձանեայ երկրին լինէր այն առ եղեռանէ»։

**21.** Շապհոյ առաջին արշաւանին ժամանակ, ինչպէս տեսանք՝ Հայք նուաճեցան ընդ Շապհով (241—243). այլ առ Գորդիանոսիւ, առ որով Շապուհ մղեցաւ յետս՝ առին դարձեալ զազատութիւն իւրեանց (244)։ Երկրորդ արշաւանին ժամանակ յետ կապանացն Վաղերիանոսւ (260)՝ Շապուհ չդպաւ Հայոց, նա մանաւանդ արար զնոսա բարեկամ և դաշնակից, քանզի Վաղերիանոսի գերութեան ժամանակ, մինչ կ'իշխէր Հայոց Արտաւազդ ոմն՝ կը գտնենք զՀայս Շապհոյ կողմը, ինչպէս յայտնի է նամակէն զոր գրեց Արտաւազդ առ Շապուհ և զորոյ օրինակը կու տայ մեզ Տրեբեղղիոս Պողիոն լատին պատմիչ (իբր 50 ամօք յետոյ քան զՎաղերիանոս).—«Արտաւազդ արքայ Հայոց գրեաց առ Շապուհ զթուղթն որ զկնի. Ուրախ եմ ընդ փառս քո, այլ երկնչիմ թէ արծարծեցեր զհուր պատերազմի մանաւանդ քան յաղթեցեր։ ԶՎաղերիանոս խնդրեսցեն և՛ որդի նորա, և՛ թոռն, և՛ զօրավարք Հռոմայեցւոց, և՛ համօրէն Գաղղիա, և՛ Ափրիկէ ողջոյն, և՛ բովանդակ Սպանիա, և՛ ամենայն Իտալիա, և՛ ամենայն զօրք, որ են ի Լիւրիկէ և յարևելս և ի Պոնտոս դաշնակիցք Հռոմոց կամ ընդ իշխանութեամբ նոցա։ Կալար դու զայր ոմն ծեր, և յարուցեր հակառակ քեզ զամենայն ազգս երկրի, թերևս և հակառակ մեզ՝ որ առաքեցաքս քեզ օգնական. դրացի քո եմք և կրեմք հանապազ վիշտս, յորժամ կռուիք ընդ միմեանս» (Տրեբ. Պող. ի Վաղեր. Ե.)։ Այս բարեկամութիւնն Հայոց կը տևէր առ Աւրելիանոսիւ (270—275), ինչպէս յայտնի է ի նամակէն Զենոբիայ թագուհւոյն, հակառակորդին Հռոմայեցւոց, առ Աւրելիանոս կայսր.—«Զենոբիա տիկին արևելից առ Աւրելիանոս Աւգոստոս. Ոչ ոք երբէք խնդրեաց զոր դուդ պահանջես՝ նամակաւ։ Քաջութիւն է, որ տայ վճիռ յիրս պատերազմի։ Խնդրես յինէն անձնատուր լինել, որպէս թէ չգիտիցես, եթէ դշխոյն Կղէոպատրա կամեցաւ մեռանել մանա-

ւանդ քան մատն լինել իւրում պատուոյ։ Զպակասէ մեզ ի Պարսից օգնութիւն, որում սպասեմք իսկ. Սարակինոսք ի մեր կոյս են, Հայք ի մեր կողմն։ Աւազակք երկրին Ասորւոց հարին զբանակ քո. զինչ լինիցի, եթէ գայցէ ձեռնն որում ամենայն ուստեք ակն ունիմք։ Ապաքէն ի բաց թողուցուս յայնժամ զգոռոզութիւնդ, որով հրամայես ինձ լինել անձնատուր, որպէս թէ իցես յաղթող ամենայն ուրեք» (Փղաւիոս Վոպիսկոս լատին պատմիչ առ Դիոկղետիանոսիւ, ուստի և ժամանակակից. յԱւրեղ. Իէ.)։ «Թէպէտ և—կը յաւելու պատմիչն—(կայսրն) և՛ զօգնութիւնն որ առաքէր ի Պարսից՝ արգել, և՛ զգունդս Սարակինոսաց և՛ զՀայոցն որոց ակն ունէր դշխոյն՝ կասեցոյց, յինքն յանկուցեալ զնոսա եթէ սպառնալեօք և եթէ հնարիւք»։

**22.** Ցետ անկման Պալմիւրայ Աւրեղիանոս կը պատրաստուէր խաղալ ի վերայ Վռամայ Ա. (273—276), բայց մեռաւ. Նոյնպէս Պրոբոս (276—282), մինչ մօտ էր սկսել պատերազմն առ Վռամաւ Բ. (276—294)։ Կարոս (282—284) յաջորդն Պրոբոսի կատարեց իւր նախորդներուն խորհուրդը։ Արշաւանքն սկսաւ։ Երկչոտն Վռամ խնդրեց հաշտութիւն, և կը պատմուի, թէ երբ հ.եշտակք Վռամայ եկան առ Կարոս խօսել հաշտութեան վրայ՝ գտան զնա ի ճաշու, որ էր պատառ մի ճալոպ խոզի և չոր ոլոռն։ Կայսրն գլուխ իւր որ էր կնտակ՝ բանալով ասէ. «Եթէ թագաւորն ձեր չառնու յանձն ընդունել զպայմանս Հռոմայ՝ արարից զերկիր նորա այնպէս մերկ՝ որպիսի գլուխս իմ է» (Տիւր. Պատմ. Արևել.)։ Այս սպառնալիք կատարուեցան ըստ մասին։ Կարոս զարկաւ Պարսիկներն ի Միջագետս, առաւ Սելևկիա և Տիզբոն, անցաւ յաղթական մինչև յայնկոյս Տիգրիսի։ Ի վերայ կար Պարսից վտանգ մեծ, որմէ զերծոյց զնոսա կայսեր մահը (284)։ Յաջորդն Կարոսի Նումերիանոս (284), զանգիտելով կեցաւ յետ։ Զայնու ժամանակաւ, այն է 284—294, կամ ի մահուանէ Կարոսի մինչև ի թագաւորութիւնն Ներսեհի (294—303) յաջորդին Վռամայ Բ՝ չկայ յիշուած պատերազմ ի մէջ Պարսից և Հռոմոց։ Միջագետք էին ի հանդարտութեան, նոյնպէս Հայք։

**23.** Այսպիսի հանդարտութեան մէջ էին արևելք առ մեղմն և երկչոտ կառավարութեամբ Վռամայ Բ-ի, մինչ թագաւորելով Ներսեհ կամեցաւ հետևել իւր նախնւոյն Շապհոյ փառասէր խորհրդոյն,—հանելով զՀռոմայեցիս յարևելից՝ տիրել միահեծան համօրէն արևմտեան Ասիոյ։ Ներսեհի առաջին գործն եղաւ յարձակել ի Հայս, ուր կը թագաւորէր թերևս տակաւին Արտաւազդ, յիշեալն ի Տրեբեղղիոսէ Պողիոնէ, և Կարոսի արշաւանէն հետէ հաւանա-

կանապէս կը գտնուէր ի բարեկամութեան Հռոմայեցւոց։ Ներսեհ մօտ էր սկսել զթշնամութիւնն ուղղակի ընդ Հռոմայեցւոց՝ մինչ Դիոկղետիանոս, որ կը դիտէր զընթացս արեւելից իբր տասը տարիէ հետէ (284—294), տեսնելով Ներսեհի յանդուգն խորհուրդը՝ որոշեց ընդդիմանալ նմա պատերազմաւ։ Ինքն գալով նստաւ յԱնտիոք, դիտել ի մօտոյ հռոմէական բանակին գործերն։ Զօրավար կարգեցաւ Գաղերիոս (յետոյ կայսր), որ արդէն նշանաւոր եղած էր յափունս Եփրատայ։ Պատերազմն ի սկզբան չեղաւ յաջող (296)։ Երիցս յետս մղեցան Հռոմայեցիք. բայց Գաղերիոս անցնելով զԵփրատ 25 հազար զօրօք, փոխանակ դնելու իւր լեգէոններն ի վըտանգի Միջագետաց բաց դաշտերուն մէջ՝ հորդեց իւր ճանապարհ ընդ մէջ լերանց Հայաստանի, որոյ բնակիչք իսկ և իսկ փութացին ի նպաստ նորա։ Պարսիկք խորտակեցան չարաչար, և Ներսեհ վիրաւորեալ ստիպուեցաւ ի փախուստ և աճապարեց խօսել ի հաշտութիւն։ Դիոկղետիանոս դրաւ զԽովբար (Քափուր) գետ սահման ի մէջ երկուց տէրութեանց։ Միջագետք որ վաղուց էին ընդ վիճիւ՝ թողան Հռոմայեցւոց այլ ևս հինգ գաւառօք անդր քան զՏիգրիս։ Այս դաշնադրութեան մէջ էր նաև Հայաստան, յոր յաւելաւ Ատրպատական կամ հիւսիսային արևմտեան մասն նորա. Թագաւորն Պարսից հրաժարեցաւ վերին իշխանութենէ Հայաստանի վրայ, Գաղերիոս առաւ տիտղոս «Հայական» (Armeniacus), ինչպէս կայ ի հրովարտակին Հալածանաց Գաղերիոսի առ Եւսեբեայ (Եկեղ. Պատմ. Գիրք Ը. Գլ. ԺԱ.)։ Այսպէս ունինք առ Եւտրոպիոսի, որ ծաղկեցաւ առ Կոստանդիանոսիւ և է գրեթէ ժամանակակից. «Գաղերիոս Մաքսիմիանոս յառաջնում ճակատուն ընդ Ներսեհի, ընդ մէջ Կաղինեկեայ և Խառանու՝ չեղև յաջող առ ի չգոյէ իմաստութեան մանաւանդ քան քաջութեան, զի սակաւաձեռն գնդաւ եւ ընդդէմ մեծի բազմութեան։ Ի բաց վանեալ ի թշնամւոյն՝ չոքաւ առ Դիոկղետիանոս, որոյ հանդիպեալ նմա ի ճանապարհին՝ ընկալաւ, ասեն, անարգանօք, մինչև տալ նմա ընթանալ զբազում հրասախս զկնի իւրոց կառաց։ Այլ Գաղերեայ միւսանգամ զօրաժողով լեալ ի Լիւրիկէ և ի Միւսիա՝ տայր դարձեալ պատերազմ ընդ Ներսեհի հաւուն Որմզդի և Շապհոյ ի մեծ Հայս, և տանէր ի գլուխ յաղթութիւն մեծ, ցուցեալ ոչ սակաւ իմաստութիւն և քաջութիւն, մինչև անձամբ անձին լրտեսել զբանակ թշնամւոյն երիւք հեծելովք միայն։ Յետ առնելոյ փախստական զՆերսեհ (297)՝ առնոյր յաւարի զբանակ նորա, ունէր զկանայս նորա, զքորս և զորդիս և զբազումս յաւագանւոյն Պարսից որ էին ընդ բանակին, և գանձս բազումս, և զնա ինքն վանեալ վկանդէր մինչև յամայի վայրս իւրոյ թագա-

ւորութեանն։ Այսպէս մեծաւ յաղթութեամբ եկեալ գտանէր զԴիոկղետիանոս, որ էր յայնժամ ի Միջագետս զօրու ծանու և ընդունէր զնա մեծաւ պատուով» (Եւտր. գիրք Թ. Գլ. ԻԴ, ԻԵ.)։ Նոյնպէս կը պատմէ և Սեքստոս Ռուփոս Հռոմայեցի պատմիչ ոչ հեռի ժամանակաւ. «Առ Դիոկղետիանոսիւ կայսերաւ եղև յաղթութիւն նշանաւոր ընդդէմ Պարսից։ Գաղերիոս Կեսար, յետ յառաջնում ճակատու յարձակելոյ սաստկութեամբ ի վերայ անթիւ բազմութեան թշնամւոյն դոյզն գնդաւ՝ ի պարտութիւն մատնեալ դառնայր յետս։ Դիոկղետիանոս ընդունէր զնա անհնարին ցասմամբ, մինչև տալ նմա հրասախս ինչ ընթանալ առաջի կառաց իւրոց, թէպէտև կրէր նա ծիրանիս։ Բազում դժուարութեամբ առնոյր Գաղերիոս հրաման՝ միւսանգամ զինու զօրութեամբ փորձել զիւր բախտ, յետ ամրացուցանելոյ զբանակ իւր գնդօք բանակելովք ի սահմանագլուխս անդր Դակիայ։ Հասեալ ի մեծ Հայս՝ Գաղերիոս գնաց անձամբ հեծելովք երկու տեղեկանալ զօրութեան թշնամւոյն։ Քսան և հինգ հազարաւ անկանէր ի վերայ ամրութեանցն Պարսից, հարկանէր յանկարծ զանթիւ բազմութիւն զօրաց նոցա և բազում նախճիրս գործէր։ Թագաւորն Պարսից Ներսեհ զերծանէր մազապուր. այլ կանայք նորա և դստերք լինէին ձերբակալ, և պահեցան մեծաւ զգաստութեամբ։ Ընդ այս զարմացեալ Պարսից՝ խոստովան լինէին, եթէ Հռոմայեցիք գեր ի վերոյ էին քան զնոսա և՛ զօրութեամբ զինուց և՛ բարուց ազնուականութեամբ, և տային զՄիջագետս հինգ նահանգօք յայնկոյս Տիգրիս գետոյ» (Սեքս. Ռուփ. Գլ. ԻԵ.)։ Եւ դարձեալ ի գլուխն ԺԴ.—«Ի ժամանակս Դիոկղետիանոսի Հռոմայեցիք ի պարտութիւն մատնեալ յառաջնում ճակատու՝ յերկրորդումն հարին զՆերսեհ արքայ Պարսից և հանին ի նմանէ զկին և զդստերս նորա, զորս պահէին բազում զգաստութեամբ։ Զկնի դաշանցն տուան մեզ Միջագետք, և հաստատեցան միւսանգամ սահմանք տէրութեանն անդր քան զափունս Տիգրիս գետոյ, մինչև իշխանութեան մերոյ ձգել ի վերայ հինգ ազգաց բնակելոց յայսկոյս գետոյն։ Պայմանք դաշանց տևեալ բաւեցին մինչև յաւուրսն Աւգոստոսն Կոստանդեայ»։



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## Երկրորդ մասին։





Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 86

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

*ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ քանաքիրական տեղեկութեանց*

## ՄԱՍՆ Գ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ,

### ՄԻՆՉԵՒ Ի ԲԱՐՁՈՒՄՆ ՆՈՑԱ։

ԹԻՖԼԻՍ

*Տպարան Մ. Դ. Ռօտինեանցի*

Типографія М. Д. Ротиніанца, Гол. пр., д. № 41.

1895

# ՄԱՍՆ Գ.

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ Ի ԺԱՄԱՆԱԿԻ ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ, ՄԻՆՉԵՒ Ի ԲԱՐՁՈՒՄՆ ՆՈՑԱ։

# ՄԱՍՆ Գ

## ԳԼՈՒԽ Ա.

## ՀԱՅՔ ԸՆԴ ՀՌՈՄԱՅԵՑԻՈՑ:

### Ա. ՏՐԴԱՏ ՄԵԾ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ԴԱՇԻՆՔ:

*1. Հայք ընդ Հռոմայեցւովք. Տրդատ մեծ: 2. Վկայութիւն Բուզանդայ, Ագաթանգեղոսի, Խորենացւոյն: 3. Ժամանակագրութիւն ի Տրդատայ մինչեւ ի վախճան Արշակունեաց: 4. Խէ ինչ կրնայ համարուիլ սորա յազգային աւանդութեան: 5. Մուտ քրիստոնէութեան ի Հայս: 6. Թուական մահուան Տրդատայ:*

**1.** Ոչ Սեքստոս Ռուփոս և ոչ Եւտրոպիոս կը յիշեն, սակայն յայտնի է պատմութենէ, թէ Միջագետաց հետ Հայաստան ևս տրուեցաւ Հռոմայեցւոց և մտաւ միւսանգամ ընդ վերին իշխանութեամբ նոցա: Առ այս ունիմք անուղղակի վկայութիւն Ամմիանոսէ, որոյ պատմութեան նայելով՝ Շապուհ Բ. երկայնակեաց (309—381), երբ 60 տարի յետոյ (358) զկնի դաշանց Դիոկղետիանոսի՝ կը պահանջէ ի Կոստանդեայ (337—361) յաջորդէն Կոստանդիանոսի՝ Միջագետաց հետ նաև զՀայս իբրև վաղեմի ստացուած, զոր նենգութեամբ կորզեցին, ասէ, Հռոմայեցիք ի հաւէն իւրմէ Ներսեհէ.—«Պարտ իմն են ինձ առնուլ այսրէն զՀայս, որպէս և զՄիջագետս, որ դաւով իմն հանան ի հաւէն իմմէ» (Ամմ. ԺԷ. 5). և Կոստանդ իւր պատասխանին մէջ կը համարէ զՀայաստան իբրև հաւէտական մարմնոյն մասերէն մին, զոր տալ ոչ այլ ինչ էր՝ եթէ ոչ խեղել այն մարմինը.—«Պիտոյ են ինձ, ասես, Հայք, որպէս և Միջագետք. և խրատ տաս ինձ յապաւել մարմին մի ողջ, զի մնասցէ առողջ» (Անդ): Այլ թէ զինչ արարին յայնժամ Հռոմայեցիք զՀայս՝ կը լռէ ժամանակակից պատմութիւնն: Սակայն հարկ է դնել նախ՝ թէ թողաւ Հայաստան, որպէս և էր յառաջ քան զյարձակումն Ներսեհի՝ ուրոյն թագաւորութիւն ընդ

հսկողութեամբ Հռոմայեցւոց, իբրև հարկատու կամ դաշնակից տէրութիւն, հզօր պատուար ընդդէմ Սասանեան զօրութեան։ Այս ոչ միայն համաձայն էր սկզբան Դիոկղետիանոսի, որ օգտակար կը համարէր հռոմէական զինուք նուաճեալ հեռաւոր երկիրներ թողուլ ինքնօրէն, այլ և առանց այսր անմեկնելի կը մնայ Արշակունեաց գոյութեան պատճառը Դիոկղետիանոսէ և այսր մինչև ի վախճան թագաւորութեանն։ *Երկրորդ*՝ թէ թագաւորն որ դրուեցաւ կամ հաստատուեցաւ Դիոկղետիանոսէ՝ էր Տրդատ մեծ։ Եւ այս ևս չէ առանց վկայութեան։ Սոզոմենոս, եկեղեցական պատմիչ Ե. դարու՝ ի վերջ կոյս Գ. դարու կամ ի սկզբան Դ-ին կը յիշէ Տրդատ ոմն թագաւոր Հայոց, առ որով եղած կը պատմէ երկրին մեծ և ընդհանուր դարձն ի քրիստոնէութիւն։ Սոզոմենոսի վկայութիւնն, նայելով այս եկեղեցական պատմչին թերութեանն ի մասին առողջ դատողութեան՝ կրնար թերևս համարուիլ հիմնեալ վկայաբանական աղբիւրներու վրայ ուստի և կասկածելի՝ եթէ չունենայինք քան զայս հզօրագոյն վկայութիւն, այն է ազգային աւանդութիւնն, և հնագոյն, գրեթէ ժամանակակից։

**2.** Բուզանդ (որ ծաղկեցաւ առ անմիջական յաջորդօք Տրդատայ, այն է ի Խոսրովէ Կոտակայ մինչև ի բաժանումն թագաւորութեանն, կամ մինչև ի դժբախտն Արշակ վերջին, և որ կը գրէ այն ժամանակին պատմութիւնը, որոյ մեծագոյն մասին էր ականատես և կամ ի մօտոյ տեղեակ)՝ գիտէ զՏրդատ որդի Խոսրովու (այս Խոսրով է Տրդատ Բ. ըստ արտաքին պատմութեան), զհայր և նախորդ Խոսրովու Կոտակայ, թագաւոր Հայոց անդէն իսկ ի սկզբան Դ. դարու. «Ի թագաւորութեանն Տրդատայ (այսինքն Տրդատայ մեծի, որ է Տրդատ Գ.), որդւոյն Խոսրովու (Տրդատայ Բ.), լուսաւորութեամբ հաճոյական սիրով և աստուածպաշտութեամբն հաւատոյ, ծանօթութեամբ ի ձեռն Գրիգորի մեծի քահանայի, և որոյ ընդ նմին կրտսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեանն զամենայն աւուրս կենաց իւրոց, մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեան իւրոյ» (Բուզ. Գ. Բ)։ Կամի ասել. ի թագաւորութեանն Տրդատայ, Խոսրովու որդւոյն, որ եղև անուանի առաքինութեամբն և աստուածպաշտութեամբ յետ ընդունելոյ զծանօթութիւն քրիստոնէական հաւատոյ ի ձեռն Գրիգորի՝ քահանայապետ էր ինքն Գրիգոր, որոյ էր գործակից և եպիսկոպոսակից կրտսեր որդին Արիստակէս, —այլովքն հանդերձ։ Ապա յետ յիշելոյ զմահ և զհանգիստ նոցա, որպէս և զտեղիս հանգստեան նոցա, լռելեայն նաև զՏրդատայ (Բուզ. Գ. ԺԴ)՝ կը յաւելու. «Ապա յետ այսորիկ թագաւորեա

Խոսրով Կոտակ, թոռն Խոսրովու, որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ արքայի» (Բուզ. Գ. Գ)։ Պատմութիւնն Ագաթանգեղոսի, թէ Դիոկղետիանոս թագաւորեցուց Հայոց զՏրդատ (իբրև ի վարձ մենամարտութեան նորա և յաղթութեան ընդդէմ Գոթաց թագաւորին. թողլով իբրև անտեղի՝ զայս և Տրդատայ անձին և գործոյն վերաբերեալ ուրիշ անհեդեդ պարագաներ)—ըստ էութեան կրնայ ընդունուիլ իբրև ճշմարիտ։ Ապա կրնանք, առ ի չգոյէ ժամանակակից յայտնի և ստուգագոյն վկայութեան՝ գէթ իբրև հաւանական ընդունել, թէ իսկ և իսկ զկնի դաշանց Դիոկղետիանոսի (297) թագաւորեց կամ հաստատուեցաւ Տրդատ մեծ ի կողմանէ և զօրութեամբ Հռոմայեցւոց։ Ոչ փոքր նպաստ կը մատուցանէ այս կարծեաց և վկայութիւն Խորենացւոյն, որ Դիոկղետիանոսի երրորդ տարին կը դնէ թագաւորեալ զՏրդատ.—«Քանզի ոչ է պատմութիւնն ճշմարիտ առանց ժամանակագրութեան՝ վասնորոյ մանրախուզիւ քննեալ գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի» (Խոր. Բ. ՁԲ)։ Ապաքէն ճշդագոյն լինէր ժամանակագրութիւն Խորենացւոյն, եթէ փոխանակ «յերրորդ» ամին՝ դնէր յերկոտասաներորդ ամին, իբրև տասն ամօք յետոյ, այսինքն՝ փոխանակ 287, որ է երրորդ ամ Դիոկղետիանոսի՝ 297, այն է նշանաւոր դաշնադրութեան տարին. բայց կրնայ նաև իբրև ճշմարիտ ընդունուիլ հաշիւ Խորենացւոյն՝ եթէ դնենք զՏրդատ թագաւորեալ տասն ամօք յառաջ քան զդաշնադրութեան տարին, այն է 287-ին, և ապա յետ պատերազմին և յաղթութեան Գաղերիոսի՝ յամին դաշնադրութեան, 297, հաստատուած ի թագաւորութեանն ի կողմանէ Հռոմայեցւոց։ Թէ ո՛վ էր արդեօք հայր Տրդատայ, Արտաւազդն որ յիշուեցաւ ի վերոյ, թէ Տրդատն Բ. արտաքին պատմութեան, ազգային անուամբ Խոսրով՝ չունիմք ասել ինչ ստուգիւ, թէպէտ վերջինն թուի հաւանականագոյն։

**3.** Յառաջ քան զմխել մեր յայս վերջին մասն պատմութեան Արշակունեաց, այն է ի թագաւորութենէն մեծին Տրդատայ մինչև ի բարձումն թագաւորութեանն՝ կարևոր է դնել ի Տրդատայ մինչև Արտաշիր տասն թագաւորաց—Տրդատայ, Խոսրովու, Տիրանայ, Արշակայ, Պապայ, Վարազդատայ, Արշակայ վերջնոյ, Խոսրովու, Վռամշապհոյ և Արտաշրի (վերջին արշակունի թագաւորին), եթէ ոչ բոլորովին ստոյգ՝ գէթ կարի հաւանական ժամանակագրութիւնը, որչափ հնար է զգուշութեամբ քաղելով արտաքին և տոհմային աղբիւրներէ, ի համեմատութենէ դիպաց պատահելոց իւրաքանչիւր թագաւորի իշխանութեան ժամանակ, և կշռելով իւրաքանչիւրին ժամանակն հռոմայեցի և պարսիկ թագաւորաց ժամա-

նակներուն հետ։ Հոս դնենք մեր ընդհանուր հաշիւն հանդերձ պատճառներով՝ որչափ մարթ է համառօտիւ։

Տրդատայ թագաւորութեան սկզբան, ինչպէս նաև Արշակունի հարստութեան բարձման թուականներն բարեբախտութեամբ ծանօթ են մեզ, այն է՝ առաջնոյն համար՝ Դիոկղետիանոսի դաշանց տարին, 297, յորում թագաւորեց կամ հաստատուեցաւ Տրդատ, և երկրորդին համար՝ Վռամայ Ե-ի (421—442) 7-երորդ տարին, որ է 428 յետ Քսի։ Արդ Տրդատայ մահը չկրնար դրուիլ ոչ յառաջ և ոչ յետոյ քան զամն 336, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։ Եւ որովհետև յայտնի է նաև, ըստ պատմութեան Ամմիանոս, Պապայ սպանման տարին, որ է 374՝ եթէ համարինք զնա թագաւորեալ 7 տարի ըստ Խորենացւոյն՝ Պապայ թագաւորութեան սկիզբը կը հանդիպի 368-ին։ Ապա ի մէջ ամացն 336 (վերջին ամ Տրդատայ) և 368 (առաջին ամ Պապայ), այն է 32 տարի՝ կը մնայ զետեղել երեց թագաւորաց, Խոսրովու, Տիրանայ և Արշակայ թագաւորութեան ժամանակներն։ Տալով Խոսրովու թագաւորել ամս ութ, ըստ Խորենացւոյն, այն է 336—343, և Տիրանայ՝ մետասան ամ, այն է 343—353, նոյնպէս ըստ Խորենացւոյն՝ Արշակայ կը մնայ 15 տարի, այն է 353-էն, որ է Տիրանայ գերութեան տարին՝ մինչև Պապայ թագաւորութեան տարին, որ է 368, այսինքն Կոստանդայ 16-երորդ տարիէն մինչև Վաղէսի 5-դ տարին, և Պարսից՝ Շապհոյ Բ-ի 43-դ տարիէն մինչև 58-դ տարին. ուստի և թագաւորութիւնն Արշակայ կը հանդիպի Կոստանդայ, Յուլիանոսի, Յովիանու և Վաղեսի կայսրութեան ժամանակներուն, և Պարսից՝ Շապհոյ Բ-ի, համաձայն պատմութեան պարագաներուն ըստ Ամմիանու և Բուզանդայ։ Կը մնայ Պապայ մահուանէն մինչև ի վախճան թագաւորութեանն Արշակունեաց, կամ 374—428,---54 տարուան միջոցը, յորում պարտ է զետեղել Պապայ յաջորդէն Վարազդատէ մինչև Արտաշիր տիրող թագաւորաց և գիպաց ժամանակը. Վարազդատայ ըստ Խորենացւոյն չորս տարին կ'իյնայ 374—377։ Որովհետև գիտենք այլուստ Հայաստանի բաժանման տարին, որ է 384, և որովհետև թագաւորութեանն Արշակայ վերջնոյ, որդւոյն Պապայ, կը տրուի (ըստ Խորենացւոյն) 5 տարի կամ սակաւ ինչ աւելի յառաջ քան զբաժանումն՝ ապա Արշակ վերջին, յաջորդն Վարազդատայ լինի թագաւորեալ յամին 379։ Կը մնայ նախընթաց երկու տարին, 377—379, և այս է Սուրենայ մարզպանութեան ժամանակն, կամ ժամանակ յանձանձչութեան Մանուէլի։ Ապա Արշակ վերջին թագաւորեց 379—383 կամ 384-ին կէսը։ Յետ իբր միոյ ամի կամ երկուց՝ Շապուհ Գ. (385—389) կը թա

փաւորեցունէ իւր բաժնին վրայ զԽոսրով, որ կը թագաւորէ 5 կամ 6 տարի, այն է 386—391 կամ 392։ Եթէ Վռամշապհոյ, Խոսրովու յաջորդին տանք, ինչպէս կու տան Կորիւն և Խորենացի, 22 տարի՝ Վռամշապուհ լինի թագաւորեալ 392—413։ Յաջորդ տարին 414՝ է Խոսրովու երկրորդ անգամ թագաւորելուն տարին։ 414—418 է Շապհոյ չորեքամեայ իշխանութեան ժամանակն։ Յաջորդ չորս տարին, այն է 418—422՝ է ապստամբութեան ժամանակն, որում կը յաջորդէ վերջին Արշակունի թագաւորին Արտաշրի վեցամեայ թագաւորութիւնն, 422—428,—ամ բարձման թագաւորութեանն Արշակունեաց։ Այսպէս Վարազդատայ թագաւորութենէն մինչև թագաւորութեան բարձման միջոցը կը հանդիպի Վաղեսի 5-դ տարիէն մինչև փոքուն Թէոդոսի (408—450) 20-դ տարին, և Պարսից՝ Շապհոյ Բ-ի, Արտաշրի Բ-ի, Շապհոյ Գ-ի, Վռամայ Գ-ի, Յազկերտի Բ-ի և Վռամայ Դ-ի ժամանակներուն։ Յետ գնելոյ զայս հաշիւ, որ կը թուի մեզ հաւանականագոյն և մերձաւոր հաշուին Գաթըրճեանի՝ յառաջ տանինք մեր պատմութիւնն ի Տրդատայ մեծէ մինչև ի բարձումն թագաւորութեանն Արշակունեաց։

4. Արտաքին ժամանակակից պատմութենէ գիտենք ստուգիւ, թէ յետ պատերազմին և դաշանցն Գաղերիոսի՝ Միջագետաց հետ նաև Հայաստան անցաւ ի Հռոմայեցիս, և Պարսք հրաժարեցան վերին իշխանութենէ այն երկիրներուն վրայ։ Աւելի քան զայս սաչափ միայն գիտենք, իբրաց վիճակէն գուշակելով՝ թէ յետ այն պատերազմին Հայաստան չեղաւ նահանգ հռոմէական, այլ թագաւորութիւն որպէս յառաջն, առանձին թագաւորաւ։ Նայելով հանգամանաց ժամանակին և ազգային գրեթէ ժամանակակից աւանդութեան (Բուզանդ)՝ այս թագաւորն ոչ այլ ոք կարէ լինել, եթէ ոչ Տրդատ մեծ. այլ թէ ինչպէս և ինչ պայմանաւ եղաւ այս՝ որպէս ասացաք, չէ յայտ արտաքին պատմութենէ. երկու տէրութեանց յարաբերութենէն տնտի և առյապա՝ կը տեսնուի միայն ըստ բաւականին, թէ Հայաստան ճանչցուեցաւ յայնժամ երկուստեք իբրև գաստակերտ կամ աւատ հռոմէական պետութեան։ Զայս կը թուի ակնարկել «դաշն» կամ «ուխտ» բառն, որստէպ կը յիշուի մեր պատմիչներէն (Բուզանդ, Եղիշէ) ի մէջ Հռոմայեցւոց և Հայոց, առանձինն՝ ի մէջ Կոստանդիանոսի և Տրդատայ, ոչ առանց քրիստոնէական ինչ նշանակութեան։ Արտաքին պատմութեան ևս չէ անծանօթ այսպիսի դաշնագրութիւն (Եւսեբիոս, Ամմիանոս)։

Գալով պատմելոյն զՏրդատայ յԱգաթանգեղոսէ, որմէ կ'առնու Խորենացին յաւելլով ինչ ինչ որ չկան յԱգաթանգեղոսի՝ մեք այս երկու ազգային աղբերաց վաւերականութեան վրայ պէտի խօ-

սինք յետոյ։ Այն պատմուածներէն իբրև ստոյգ և վաւերական հոս կ'առնունք միայն սա ազգային աւանդութիւնը, թէ Տրդատ էր արդարև «ուժով պնդութեան հաստատութեամբ, բուռն ոսկերօք և յաղթ մարմնով», թերևս նաև «բարձր և լայն հասակաւ», ուստի և «քաջ և պատերազմող անհնարին»։ Եւ զայս կ'ընդունինք իբրև պատմական՝ յենլով յազգային երգն, զոր կը բերէ Ագաթանգեղոս իբրև գրոյց ի բերանս հասարակաց, կամ որպէս նայն ասէ՝ «պատշաճեալ ի բանս կարգի առակաց»—«իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց և ցամաքեցոյց ի սիգալ իւրում զյորձանս ծովուց» (Ագաթ. ժԱ)։

**5.** Կը մնայ միւս ևս զարմանալի ինչ, որ արդարև կը թուի եղած առ Տրդատաւ, այն է քրիստոնէութեան հանդիսաւոր մուտն ի Հայաստան։ Այս դիպուածին նախընթաց և յաջորդ պարագաներուն վրայ, որ վկայաբանական են մանաւանդ քան պատմական՝ պիտի խօսինք յետոյ. Հոս կը յիշենք միայն երկու ժամանակակից կամ իբր ժամանակակից վկայութիւն, որոց մին, որ է յԵւսեբիոսէ՝ կը ցուցնէ զՀայաստան արդէն ազգովին քրիստոնեայ ի սկզբան Դ. դարուն, և միւսն ի Սոզոմենոսէ, կարճ և աղօտ յոյժ՝ զդարձէն Հայոց ի քրիստոնէութիւն։ Ըստ Եւսեբեայ՝ Հայք, ջերմագոյնք յաստուածպաշտութեան՝ կու տան պատերազմ ընդ Մաքսիմինոսի Դայայ (307—313, տէր Ասիոյ և Եգիպտոսի), որ կ'ստիպէր զնոսա ի կռապաշտութիւն, և խորտակեցին զնա չարաչար.—«Գրգռեցաւ, ասէ, պատերազմ ի բռնաւորէ անտի ընդ Հայոց, որ ի սկզբանէ բարեկամք և նիզակակիցք էին հռոմէական ժողովրդեան։ Եւ զի նոքին ևս քրիստոնեայք էին և ջերմագոյնք ի բարեպաշտութեան որ առ աստուածութիւնն՝ ջանացաւ աստուածատեացն բռնաւոր բռնութեամբ ածել զնոսա ի պաշտօն կռոց և դիւաց, և յայն սակս զբարեկամսն յատելիս, զդաշնաւորսն ի թշնամիս դարձոյց... այլ ինքն ի պատերազմի անդ հանդերձ զօրու իւրով գունակ գունակ նեղեալ վտանգեցաւ չարաչար» (Եւս. Եկ. պատմ. Թ, Գլ. Ը)։ Իսկ Սոզոմենոս, մերձաւոր ժամանակաւ, սաչափ միայն ասէ, թէ սքանչելիք «աստուածանշանք» եղան ի տան թագաւորին, որ դարձաւ և դարձոյց ևս զազգն ի քրիստոնէութիւն։ Սոզոմենոս կու տայ արդարև զանուն թագաւորին—Տրդատ, բայց ոչ կը յայտնէ, թէ ինչ էին այն նշանք, և ոչ կը յիշէ զԳրիգոր և զՀռիփսիմեանս, որ ըստ ազգային աւանդութեան էին գլխաւոր գործիք այն դարձին։ Զարմանալի է սակայն իսպառ լռելն Եւսեբեայ զդարձէն Հայոց, բաց ի յիշատակութենէ պատերազմին, ուր զՀայս կը դնէ վաղուց քրիստոնեայս։

**6.** Տրդատայ մահուան թուականն չէ ստուգիւ յայտնի։ Սակայն հաւանական կը թուի, թէ այս չեղաւ ոչ շատ յառաջ և ոչ շատ յետոյ քան զմահն Կոստանդիանոսի (337)։ Եւ առ այս ունիմք բաւական ապացոյց։ Ըստ արտաքին վկայութեան՝ իսկ և իսկ զկնի մահուն Կոստանդիանոսի, ի վախճանի քառասնամեայ խաղաղութեան (297—337), այն է Գագերեան դաշանց թուականէն մինչև ի մահն Կոստանդիանոսի՝ կ'սկսին յուզմունք ի Հայս։ Եւ յազգային պատմութենէ (Բուզ.) գիտենք, թէ այն յուզմունք սկսան անմիջապէս յետ մահուն Տրդատայ։ Արդարև զօրութիւն և համբաւ երկու մեծ և հզօր թագաւորաց դաշնակցաց, Կոստանդիանոսի և Տրդատայ էր, որ կը բռնէր և՛ զներքին խռովիչս, և՛ զարտաքին թշնամին Շապուհ Բ. (309—381)։ Զիարդ և իցէ՝ մահն Կոստանդիանոսի և Տրդատայ տուաւ վերջ, ինչպէս ընդհանուր խաղաղութեանն արևելից՝ նոյնպէս հանդարտութեանն զոր վայելեցին Հայք ի բովանդակ ժամանակս թագաւորութեանն Տրդատայ։

---

## *Բ. Ի ՄԱՀՈՒԱՆԷՆ ՏՐԴԱՏԱՅ ՄԻՆՉԵՒ ՑԱՐՇԱԿ:*

*1. Առաջին երկու յաջորդք Տրդատայ: 2. Համեմատութիւն Բուզանդայ ընդ Խորենացւոյն: 3. Ամմիանոս, Յուլիանոս. Բուզանդ: 4. Երկու ցեղք: 5. Յարձակումն Մազքթաց: 6. Պատճառ այս յարձակման. Գրիգորիս: 7. Պարթեւք եւ շինութիւնք Խոսրովու: 8. Թշնամութիւն ի Շապհոյ. Դատաբէ. Մատնութիւն. Վաչէ սպարապետ. Ջնջումն ցեղին Բզնունեաց: 9. Ապստամբութիւն բդեշխին Աղձնեաց: 10. Պատերազմ ընդ Պարսս. Սպանումն Վաչէի. 11. Արտաւազդ որդի եւ յաջորդ Վաչէի ի սպարապետութեան: 12. Մահ Խոսրովու եւ Վրթանայ: 13. Միջոց հոռմէական ազդեցութեան: 14. Վարչութիւն Տիրանայ: 15. Յուսիկ կաթողիկոս. Խնդիր ձեռնադրութեան: 16. Նկարագիր Յուսկան. սպանումն նորա. բուն պատճառ այս սպանման: 17. Որդիք Յուսկան: 18. Ծերունին Դանիէլ: 19. Մեղադրութիւն Բուզանդայ զազգէն: 20. Պատմութիւն Դանիէլի ծերոյ: 21. Խորհրդածութիւն զմարգարէութենէ ծերունւոյն Դանիէլի: 22. Ներքինիք: 23. Անմիտ քաղաքականութիւն Տիրանայ. Դաւաճանութիւն. Փիսակ: 24. Հայք զկնի ձերբակալութեանն Տիրանայ:*

**1.** Զերկուց առաջին յաջորդացն Տրդատայ, զԽոսրովայ կոչեցելոյ Կոտակ, այն է փոքր (336—343), և զՏիրանայ, զորդւոյն և զյաջորդէ այս վերջնոյն (343—353)՝ չիք յիշատակութիւն յարտաքին պատմութեան, բայց բարեբախտութեամբ պատմութիւնն, որ-

որէս տեսցուք ի վերոյ՝ անդստին ի Խոսրովայ կ'սկսի լինել ազգային և ժամանակակից։ Բուզանդ և Խորենացին կու տան մեզ առատ նիւթ այն ժամանակին վրայ, բայց մեք կ'ընտրենք զԲուզանդ քան զԽորենացին, որ ոչ միայն չէ ժամանակակից, ժամանակագրութեան կողմանէ ևս շփոթ է և հակասական և դիպաց կարգին և ընծայ-ութեան կողմանէ այնպէս խառնակ և կրճատ, որ պատճառի և գործոյ կապակցութիւնն կը խանգարի, և քննողն անկանի յանկ լաբիւրինթոս՝ այլ և է անմիաբան ընդ արտաքին ժամանակակից պատմութեան։ Այս կը տեսնուի յայտ յանդիման ի համեմատու-թենէ Խորենացւոյն ընդ Բուզանդայ ի սկզբանէ պատմութեան սորա մինչև ի կատարածն, այն է ի Խոսրովայ մինչև ի բաժանումն թա-գաւորութեանն Արշակունեաց։

**2.** Բուզանդ, իբրև արիադնեան թել երթալով յառաջոյ քըն-նողին, աջակցութեամբ արտաքին ժամանակակից պատմութեանց, ուր այս վերջինն ունի աղերս ընդ ազգայնոյն՝ կը հանէ զնա (զքըն-նողն) նեղ և դժուարին կիրճերէ, ընդ որս ելանել ի դիւր ան-հնար է Խորենացւով։ Բուզանդայ մի միայն յանցուածն է սիրելն զՀրաշալիս և չլինելն կարի խնն յարեալ յազգային եկեղեցական մար-մինն, որ մեծ թեր ունի մեր պատմութեան այս մասին մէջ. բայց և ոչ Խորենացին ազատ է յայսցանէ։ Սակայն նախամեծարութիւնն զոր կու տանք Բուզանդայ՝ չէ այնպիսի որ չկացուցանէ զմեզ ազատ անաչառ քննելէ այնչափ զնա, որչափ միւսը, մանաւանդ որ միամիտ պատմիչն մեր կը թողու զինքն տանել յորձանաց իւրոյ միտմանն ի Հրաշալիս և ի կուսակցութիւն եկեղեցական խմբի, յորմէ և ինքն է։

**3.** Ասացաք թէ չունիմք յիշատակութիւն արտաքին պատ-մութենէ զերկուց յաջորդացն Տրդատայ, զԽոսրովէ և զՏիրանայ. զԱրշակ միայն կը յիշէ յանուանէ Ամմիանոս 360-էն իբր առաջին թագաւորեալ. դժբախտութեամբ կորուսեալ են Ամմիանու առաջին երեքտասան գիրք, յորս կը գտնէինք անտարակոյս ինչ ինչ յիշուած զնախորդացն Արշակայ։ Ունիմք սակայն բարեբախտութեամբ վա-ւերական ինչ յիշատակութիւն ժամանակակից, թէպէտ կարճառօտ յոյժ և աղօտ, այն է առաջին ճառն, զոր խօսեցաւ Յուլիանոս ա-ռաջի Կոստանդայ յետ դարձին նորա յաղթութեամբ ի Պաննոնիոյ (353), այն է յետ նուաճելոյ արևմտից ապստամբութիւնը և մի-ացունելոյ ամբողջ Հռոմէական կայսրութիւնն ընդ իւր ձեռամբ։ Ճառն Յուլիանոսի կը բովանդակէ արդարև համառօտիւ զանցս Հայոց ի մահուանէ Տրդատայ, կամ ի թագաւորութենէն Խոսրովա Կոտակայ մինչև զԱրշակ (336—353), առանց ո՛չ սորա և ոչ նոցա

անունն լինելու։ Ըստ բանից Յուլիանու՝ ի մեջքան կայսերութեանն Կոստանդեայ պատերազմ ի վերայ կալը յարձակիլ Պարսից դէմ, (քանզի Շապուհ Բ. դրժած էր դաշանց որ կապեցան առ Ներսեհիւ հաւուն նորա), դժուարին կ'ընէր սակայն յաջողութիւնն։ Թող ուրիշ դժուարութիւններ և վիշտեր, որ կը ծագէին ամէն կողմանէ՝ Հայոց մէջ ևս կային յուզմունք։ Մի մասն ապստամբած և յարած էր ի Պարսիկս, այլք խոյս տուած էին համդերձ թագաւորաւն. կային նաև որ դիմած էին ի Յոյնս։ Բայց երբ Կոստանդ վճարելով արևմտից պատերազմը միացուց կայսրութիւնը՝ ամենայն ինչ յարդարեցաւ։ Հայք շահուեցան, քանզի թէ նոքա, որ յարած էին ի Պարսիկս և որոց երկիւղէն խոյս տուած էր «երկրին իշխանը», և թէ նոքա, որ ի Յոյնս ապաւինած էին՝ դարձան իրենց երկիրը. առաջինքն կը զղջային ամօթով իրենց ստահակութեան համար, վերջինքն ուրախ էին որ մնացին հաւատարիմ. և թէ նոքա և թէ սոքա գոհ էին, քանզի գտան սպառիւ և խաղաղութիւն միանգամայն։ Ահա ճառքն այս մասը. «Ի վախճանել Կոստանդիանու (այլ) բիւր անհարթութիւնք և վիշտք որ յամենայն կողմանց բուսանէին՝ դժուարագոյն զլոյս պատերազմին (արևելից) գործէին. մանաւանդ Հայք, հին նիզակակիցք, որ անդէն յիւրեանս յուզեալք ապստամբութեամբ և ոչ փոքր ինչ մասամբ յետս ի Պարսիկսն կացեալ էին և յարուարձանեալ սահմանս ապատակէին հինիւ»։ Բայց յետ դարձին կայսեր ի Պանոնիոյ՝ իբրք Հայոց յարդարեցան. — «Այնք ի Հայոց որ ի թշնամիս անդր յարեալ էին՝ ի բաց կացին, յորժամ և՛ զնոսա, յորոց իշխան աշխարհին—(Յուլիանոս չէր համարէր արժանի Հայոց թագաւորներուն տալ թագաւոր տիտղոսը)—ստիպեցաւ փախչել՝ ածեր առ մեզ, և՛ այնոցիկ որ փախեանն այսր՝ ապահով և աննենգ դարձ ի բուն աշխարհն յարդարեցեր։ Եւ այնպէս իսկ մարդասիրութիւն առ այնոսիկ ցուցեր, որք յառաջ քան զսակաւ մի առ մեզ եկեալ էին, և քաղցրութեամբ գնացեր ընդ այնոցիկ, որք ընդ իշխանին իւրեանց դարձան յետս՝ զի ոմանք մեծապէս ընդ այն տրտնջացան, զի յառաջագոյնն յետս կացին, այլք զմօտաւորսն նախամեծար քան զառաջին իշխանութիւնն համարէին։ Իսկ որ յառաջագոյն այսր ապաստանեալ եկեալ էին՝ ասէին թէ յարգեանց և ի գործոց ուսաք վարել չափաւորութեամբ. իսկ դարձեալ այլք խոստովան լինէին, թէ զչապստամբելոյն ըստ արժանաւորութեան ընկալաք հատուցումն վարձուց։ Այնչափ պարգևս և պատիւս յաճախեցեր այնոցիկ որ դարձանն այսրէն՝ զի չգչարէին և չնախանձէին ինչ ընդ թշնամիսն իւրեանց, որք և բախտաւորքն էին և լիրաւի ՚ի պատուի։ Զայս ամենայն ի սակաւ ժամանակի

կարգեալ հաստատեցեր» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. հտ. Բ. 463, ծան 1)։ Բուզանդ երկար կը նկարագրէ Յուլիանոսի այս ծրագիրն Հայոց վրայ, ինչպէս պիտի տեսնենք արդ։ Սաչափ միայն ըսենք կանխաւ համառօտիւ, թէ Յուլիանոսի ճառն է համառօտութիւն Բուզանդայ Գ. դպրութեան ԺԷ, ԺԸ, Ի, ԻԱ և Դ. դպրութեան Ա. գլուխներուն։

Բուզանդ յետ յիշելոյ համառօտիւ (Գ. Բ.) երկու առաջին քահանայապետներն «ի թագաւորութեանն Տրդատայ», զԳրիգոր և զԱրիստակէս, որոց հանգստեան տեղերը կ'անուանէ—միոյն Թորդան ի Դարանաղեաց գաւառին, միւսոյն Թիլն ի գաւառին Եկեղեաց՝—կ'սկսի (Գ. Գ.) իւր պատմութիւնն ի թագաւորութենէն Խոսրովու փառաւոր գովեստիւ. «Յետ այսորիկ թագաւորեաց Խոսրով Կոտակ, որդի քաջի և առաքինւոյն Տրդատայ արքայի։ Յաւուրս սորա եկաց և եղև քահանայապետ յաթոռն հօրն, փոխանակ հօրն իւրոյ և եղբօրն իւրոյ՝ երէց որդին Գրիգորի Վրթանէս։ Խաղաղութիւն և շինութիւն, մարդաշատութիւն և առողջութիւն, պտղաբերութիւն և ստացուածաշատութիւն և շահեկանութիւն, և մեծն աստուածասէր պաշտօն ի հաճոյակատարն բարութիւն յամս յաւուրս սորա աճել բազմացաւ։ Լուսաւորէր և առաջնորդէր նոցա սուրբն Վրթանէս իբրև զհայրն, իբրև զեղբայր իւր. իրաւունք և արդարութիւն ծաղկեալ էին ի դարուն յայնմ»։ Բայց արագ կը հասնին յուզմունք։ Վրթանէս կը կրէ զառաջին յարձակումն քըրմական կուսակցութենէ մը.—«Սա (Վրթանէս) երթեալ, ասէ, կատարէր զպատարագն գոհութեան ի մայրն եկեղեցեացն Հայոց յերկրին Տարօնոյ։... Որք միանգամ զհնութիւն կռապաշտութեան հեթանոսութեան մինչև ցայնժամ ունէին գաղտնի՝ ժողովեալք հասանէին իբրև երկու հազարք, խորհուրդ եդեալ ընդ միմեանս՝ սպանանել զքահանայապետն Աստուծոյ զՎրթանէս... հրամանաւ մեծին Հայոց տիկնոջն... վասն զի յանդիմանէր զնա սուրբն վասն գաղտնի շնութեան կծծութեան բարոյից պոռնկութեանն»։ Սակայն չյաջողեցաւ խորհուրդն, թերևս ակնածութենէ քահանայապետին կամ առ երկիւղի թագաւորին։ Սակայն Բուզանդ իսկ և իսկ կը հասցունէ սքանչելիս.—«Որոց առ հասարակ որք ի գնդին էին՝ բազուկք իւրաքանչիւր յետս դարձեալ ի վերայ իւրաքանչիւր թիկանց, առանց իրիք կապելոյ սքանչելապէս կապեալ լինէին։ Այսպէս պաշարեալք ընկապճեալք գելեալք վանեալք կծկեալք, ամենեքեան առհասարակ յերկիր անկեալք անբարբառ կային, անխաղացք ի տեղւոջէն, որք էին տոհմք և ազգք աշխարհակերք աշխարհաւերք ժանդագործ քրմացն։... Իսկ Վրթանէս մատուցեալ հարցա-

նէր զնոսա, եթէ դուք ո՞յք էք, կամ ուստի՞ գայք, կամ զի՞ խընդրէք։ Իսկ նոցա զարգարն սկսեալ խօսել՝ խոստովան լինէին, եթէ եկաք զի աւերեսցուք զտեղիս և զքեզ սպանցուք, հրամանաւ համարձակեալ ակնարկելով մեծին Հայոց տիկնոջն»։ Որպէս զի թերի չմնայ հրաշագործութիւնն՝ Բուզանդ կը յաւելու. «Իսկ երանելին Վրթանէս... աղօթս մատուցանէր և խնդրէր յԱստուծոյ. բժշկէր և արձակէր զնոսա յաներևոյթ կապանացն և յանհնարին կծկութենէն տանջանացն»։

4. Քան զայս աւելի ծանր էր երկու մեծ նախարարութեանց, Մանաւազեանց և Որդունեաց կռիւն, որոյ վախճանն եղաւ երկու ցեղերուն միանգամայն կորուստը.—«Զայն ժամանակաւ յարեաւ խռովութիւն մեծ յաշխարհին Հայոց, զի մեծ նախարարք և իշխանք երկու, գաւառակալք աշխարհատեարք անկանէին ընդ միմեանս և տային մարտ պատերազմի առանց իրաւանց... իշխանն Մանաւազեան տոհմին և միւս ևս նահապետն Որդունեաց տոհմին։ Կռուեցան ընդ միմեանս մեծաւ պատերազմաւ, և բազում մարդկան լինէր ծախումն կոտորածոյ։ Ապա առաքեցին թագաւորն Խոսրով և մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս զպատուական զմեծ եպիսկոպոսն Աղբիանոս ի մէջ նոցա խօսել ի հաշտութիւն խաղաղութեան։... Անարգեցին զնա և ոչ լուան բարեխօսութեանն եկեղոյն։... Ապա մեծ ցասմամբ և բազում սրտմտութեամբ արձակեաց թագաւորն ի վերայ նոցա զՎաչէ որդի Արտաւազդայ, զնահապետ Մամիկոնեան տոհմին, յազգէ սպարապետութեան Հայոց, զմեծ զօրավար զօրաց իւրոց՝ սատակել կորուսանել զազգսն զերկոսեան։ Երթեալ հասանէր զօրավարն Վաչէ, հարկանէր վանէր զնոսա և ոչ թողոյր զերկոցունց տոհմացն զորձ կորիւն և ոչ զմի. և ինքն դառնայր առ արքայն Խոսրով և առ եպիսկոպոսապետն Վրթանէս» (Բուզ. Գ. Դ.)։

5. Երրորդ մեծագոյն վտանգն եղաւ Մազքթաց թագաւորին Սանեսանայ յարձակումն ի Հայս մանր մանր հիւսիսային (Սկիւթացի) ցեղերու բազմութեամբ.—«Յայնմ ժամանակի թագաւորն Մազքթաց Սանեսան անհնարին նիւթեաց զսրտմտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին Խոսրովու արքային Հայոց, և գումարեաց ժողովեաց զամենայն զօրս Հոնաց և Փոխաց, Թաւասպարաց, Հեճմատակաց, Իժմախաց, Գաթաց և Գղուարաց, Գուգարաց, Շչբաց և Ճղբաց և Բաղասճաց և Եգերսուանացն և այլոց, խառնազանճ բազմութեամբ անթիւ անբնակն վաչկատուն զօրութեանց, որում միանգամ ինքն իշխէր զօրացն բազմաց։ Եկն անց ընդ իւր սահմանն ընդ գետն մեծ ընդ Կուր, և եկն տարածեցաւ ելից

զերկիրն Հայոց աշխարհին։ Եւ չգոյր թիւ բազմութեան հեծելազօր գնդացն, և ոչ համար շերտաւոր հետևակ զօրուն։ Եւ եկեալցին ծածկեցին զամենայն երկիրն Հայոց. քանդեցին, գերեցին, առհասարակ աւերեցին. սփռեցան տարածեցան զսահմանօքն, լի և լի ծաւալեցան մինչև ի փոքր քաղաքիկն Սատաղու և մինչև ի Գանձակ, սահմանս Ատրպատականի. խաղացուցին, ի մի վայր ժողովեցին, ի ժամադիր կողմանս յԱյրարատեան գաւառին բանակ մեծ լինէր։ Եւ խոյս ետ թագաւորն Հայոց Խոսրով յերմէ եղբարցն, ի Սանեսանայ յարքայէն Մազքթաց, և անկաւ յամուր բերդն Դարեւնից յերկիրն Կովգայ, և ընդ նմա ծերունին Վրթանէս եպիսկոպոսապետն Հայոց։ Ապա առնուին պահս պաշտել և խնդրել յԱստուծոյ, զի փրկեսցէ զնոսա յայնմ ի դառն դահճէն։ Եւ նա ծածկեալ բռնացեալ ունէր զերկիրն առհասարակ իբրև տարի մի։ Ապա եկն եհաս Վաչէ որդի Արտաւազդայ ի Մամիկոնեան տոհմէն, զօրավար ամենայն Հայոց Մեծաց, զի եկեալ էր նա ի ժամանակին յայնմիկ զերկայն ճանապարհս ի կողմանս Յունաց։ Ապա ժողովեաց նա զամենայն քաջս քաջս նախարարացն, և գունդ կազմէր բազում յոյժ և հասանէր անկանէր ի վերայ բանակին յառաւօտուն ժամուն այգենալոյն պաշտամանն, զի բանակեալ էին նոքա ի լերինն որ կոչի Ցլու գլուխ, և առ հասարակ ընդ սուր հանին զամենեսեան, և ոչ մի ոչ ապրեցուցանէր, և դարձուցանէր զբազմութիւն գերեացն։ Եւ յետ այնորիկ առնոյր զաւարսն, խաղայր գնայր ի դաշտն Այրարատեան գաւառին, գիտ[illegible]էր զՍանեսան բուն գնդաւն ի Վաղարշապատ քաղաքի։ Առեալ զգունդն Վաչէ յարձակեցաւ ի վերայ քաղաքին։ Եւ իբրև տեսին զնա յարձակեալ ի վերայ իւրեանց՝ փախեան ելին ի քաղաքէ անտի յառապարն ի կողմն Օշական բերդին, և զանապատն և զքարուտ տեղիսն ապաւէն իւրեանց համարեցան. և լինէր սաստիկ պատերազմ յոյժ յոյժ։ Եւ նիզակակիցք զօրավարին Հայոց էին Բագարատ Բագրատունի, Մեհունդակ և Գարեգին Ռշտունիք և Վահան նահապետն Ամատունեաց տոհմին և Վարազ Կամսարական։ Հասանէին հարկանէին սատակէին զզօրսն Ալանաց և Մազքթացն և Հոնացն և զայլոց ազգացն, և լնուին զդաշտն առապարացն առհասարակ դիակամբք մեռելոց։... Ապա եկեալ արքային ի տեղի ճակատուն, և ընդ նմա մեծ եպիսկոպոսապետն Հայոց՝ տեսին զկոտորածն հարելոց, զի նեխէր երկիրն ի հոտոյ մեռելոցն, և ետուն հրաման գուգազ հանել յաշխարհէ և անդէն ծածկել քարակարկառ վիմօք, զի մի ի շարաւոյ հոտոյն մեռելոտի ոսկերացն երկիրն պղծեսցի» (Բուզ. Գ. Ե.)։

6. Բուզանդ կու տայ այս յարձակման պատճառը՝ Գրիգորիս, երէց որդին Վրթանայ, որ կարգեալ էր եպիսկոպոս կողմանցն Աղուանից, թերեւս Տրդատայ ժամանակէն, որպէս ասէ Խորենացին՝ կարի խիստ կրօնական նախանձու կ'երթայ քարոզել ուրիշ Աղուան ցեղերու, որ չէին ընդ իշխանութեամբ Հայոց։ Գրիգորիսի քարոզութիւնն ի սկզբան կը գործէ բաւական ազդեցութիւն. յետոյ այն բարբարոսք, որոց գլխաւոր գործն էր աւարառութիւն, յափշտակութիւն, սպանութիւն, այլովքն հանդերձ՝ կարծեցին թէ Գրիգորիսի գալուստն էր գալ Հայոց թագաւորին կողմանէ՝ կասեցունելու համար զնոսա իւրեանց աւարական գնացմանէն, ուստի թըշնամացան, եւ սպաննելով զԳրիգորիս՝ յարձակեցան ի Հայս։ Թերեւս դրդողներ ևս գտնուեցան.—«Իբրեւ ուղղեաց (Գրիգորիս) սեղան եւ նորոգեաց զամենայն եկեղեցիս կողմանցն Աղուանից՝ եհաս նա մինչեւ ի ճամբար բանակին Արշակունւոյ արքային Մազքթաց, որոյ անուն իւր Սանեսան կոչէր, քանզի եւ՛ նոցա եւ՛ Հայոց թագաւորացն մի ազգաւորութիւն էր տոհմին բնութեան։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Մազքթաց... սկսաւ քարոզել եւ աւետարանել նոցա զՔրիստոս։ Սկսան քննել զօրէնսն Քրիստոսի, եւ ուսան ի նմանէ, թէ ատելի է Աստուծոյ աւարառութիւն եւ յափշտակութիւն, սպանութիւն, ագահութիւն, այլազրկութիւն, զայլոցկերութիւն, ցանկութիւն այլոց ստացուածոց. զայրացան ընդ բանս նորա եւ ասեն. Զի ոչ յափշտակեսցուք, զի ոչ աւարեսցուք, զի ոչ առցուք զայլոյ, իւ կեցցուք այսչափ անչափ զօրաց բազմութիւնքս... Եկեալ, ասեն, սա այսպիսի բանիւք կամի ի քաջութենէ որսոյն կենաց մերոց խափանել զմեզ. եթէ սմա լուիցուք եւ դարձցուք յօրէնս քրիստոնէութեան՝ իւ կեցցուք։ Այս խորհուրդ, ասէին, Հայոց թագաւորին է. զսա յղել առ մեզ, զի այսու ուսմամբ խափանեսցէ զմեր արշաւանս աւարառութեան հինի յաշխարհէն իւրմէ. այլ եկայք զսա սպանանիցուք ի միջոյ, եւ մեք ի Հայս արշաւեսցուք, աւարաւ զմեր աշխարհս լցցուք»։

7. Ի վարձ այս յաղթութեան Խոսրով կու տայ մեծամեծ պարգեւներ նախարարաց.—«Ապա եւս հրաման թագաւորն Հայոց Խոսրով տալ պարգեւս արանցն քաջացն, որ վաստակեցին նմա եւ փոխանակեցին զանձինս իւրեանց փոխանակ աշխարհին Հայոց Մեծաց յամենայն ի մարտս ճակատուցն պատերազմաց։ Եւ ետ Վաչէի զօրավարին զականս Ջանջանակին եւ զՁրաբաշխիս եւ զՁլու գլուխ ամենայն գաւառակօքն հանդերձ. Նոյնպէս եւ այլոց նախարարացն մեծամեծ պարգեւս» (Բուզ. Գ. Ը)։ Այս պատերազմէն անմիջապէս ետքը կը դնէ Բուզանդ զշինութիւնսն Խոսրովու, զԴուինն եւ զեր-

կոսին անտառսն, զՏաճար մայրին առ Ազատ գետով ի Գառնւոյ մինչև ի Դուին ուր էին ապարանքն Տիկնունի, թերևս ամարանոց տիկնանց, և անտի ի խոնարհ դէպ ի հարաւ զԽոսրովակերտն, միւս ևս անտառ իբրև «տեղիք որսոց զբօսանաց ուրախութեան» թագաւորութեան նորա, հանդերձ արքունի ապարանօք.—«Եւ ետ հրաման թագաւորն զօրավարին իւրոյ հանել խաշար յաշխարհէն բազում, և բերել զվայրենի կաղնի մայրեաց, և տնկել զայն յԱյրարատեան գաւառին, և առնել (սկսեալ) յամուր բերդէն արքունի որում կոչեն Գառնի, մինչև ի դաշտն Մեծամօրի ի բլուրն որ անուանեալ կոչի Դուին, որ կայ ի հիւսիսոյ կողմանէ քաղաքին մեծի Արտաշատու, զգետն խոնարհ մինչև յապարանսն Տիկնունի՝ տնկեցին զկաղնին, և կոչեաց զանուն նորա Տաճար մայրի։ Եւ միւս ի մայրեացն յեղեգնաբերանին ի նմանէ ի հարաւակոյս լցին զդաշտն կաղնատուն տնկով, և կոչեցին զանուն նորա Խոսրովակերտ, և անդ շինեցին զապարանսն արքունականս, և զերկոսեան տեղիսն (անտառսն) պարսպեալ փակեցին, և ոչ կցեցին ի միմեանս վասն պողոտայի ճանապարհին։ Եւ աճեաց բարձրացաւ. և ապա զամենայն երէս և զգազանս հրամայեաց ժողովել թագաւորն և լնուլ զքաղաքորմսն (զանտառսն փակեալս իբրև զքաղաք որմովք), զի լիցին նոցա տեղիք որսոց զբօսանաց ուրախութեան թագաւորութեան նորա։ Եւ զօրավարն Վաչէ կատարէր վաղվաղակի զասացեալսն արքայի» (Բուզ. Անդ)։ Գոյին ուրեմն և առ Հայովք պարտէզք հասարակաց կամ արգելոցք գազանաց և էրէաց (ménagerie)։

Ց. Այն ինչ ազատած էին Հայք յարշաւանէն Մազքթաց՝ Շապուհ տեսնելով զթուլութիւն, թերևս և զակարութիւն Հռոմայեցւոց, որ 338-էն հետէ, այն ի մահուանէն Կոստանդիանոսի և յերկծանելոյ դաշանցն կ'սպառնային Պարսից, բայց չկրցան վճարել ինչ, և զՀայաստան թողեալ գրեթէ անօգնական՝ սկսաւ յայտնի թշնամութիւն Հայոց դէմ։ Մինչ Խոսրով կ'զբաղէր անտառներով Շապհոյ զօրքը կը մտնեն ի Հեր և ի Զարևանդ գաւառ։ Իսկոյն Դատաբէ նահապետ Բզնունեաց կը ղրկուի զօրօք. կը մատնէ զօրքը Պարսից. Խոսրով և Արթանէս կը դիմեն յաղօթս. Վաչէ նոր գնդաւ, իբր 30 հազարաւ, կը զարնէ թշնամին առ ծովուն Բզնունեաց. մատնիչն Դատաբէ կը բռնուի և կը պատժուի ազգովին.—«Մինչդեռ նա (Խոսրով) զմայրեօքն տնկելովք էր՝ յանկարծակի գուշակ հասանէր առ Խոսրով ի Հէր և ի Զարևանդ գաւառէ, թէ պատրաստեալ են զօրքն Պարսից գալ հասանել ի գործ պատերազմի ի վերայ քո։ Ապա հրաման ետ արքայ Խոսրով Դատաբայ նահապետի Բզնունեաց գուգազ (անկանոն զօրք) հանել յաշխարհէ

ունելի քան զչափն, և զհամար (կանոնաւոր) զօրոն մատենիկ գընդաւն ընդ առաջ նոցա խաղալ հասանել ի դիմի հարկանել, արգելուլ զթշնամիսն։ Իբրև հասանէր Դատաբէն՝ խորհուրդ միաբանութեան դնէր ընդ իշխանս զօրացն Պարսից, կամեցաւ մատնել ի ձեռս նոցա զարքայն Հայոց զտէրն իւր։ Դարան հրամայեաց գործել թշնամեացն ի վերայ իւրոց զօրացն. յանկարծ յեղակարծումն տարակարծի զքառասուն հազար զօրսն Հայոց զկէսս կոտորէին, և այլքն փախստական լինէին։ Եւ Դատաբէն չարագործ առեալ զզօրսն Պարսից՝ և կամէր անկանել ի վերայ թագաւորին Հայոց։ Ապա փախստականք զօրացն վաղ հասանէին ի բանակ արքային Հայոց, գոյժ առնել զանհնարին կործանումն իւրացն եղելոց, զչարագործութիւն մատնութեանն անօրէն Դատաբենայ։

Ապա անկանէր թաւալէր խնդրէր յԱստուծոյ բազում պաղատանօք և ուժգին արտասուօք թագաւորն Հայոց Խոսրով հանդերձ Վրթանաւ քահանայապետիւն։ Եւ յետ այնորիկ աճապարէր կուտէր զօրս առ ինքն իբրև երեսուն հազար հանդերձ զօրավարաւն Վաչէիւ, գայր հասանէր ընդ առաջ նոցա ամենայն աւագախումբ մեծամեծ նախարարօք իւրովք։ Եւ դիպեցան միմեանց առ ափն ծովուն Բզնունեաց, յԱռեստն աւանի, ի ձկնատեսանոն արքունի ի վերայ գետակի. տեսին զզօրսն Պարսից զի եկեալ էին անթիւ փղօք և անչափ զօրօք. և սոքա հասին անկան ի վերայ բանակին Պարսից. հարին սատակեցին, և թափէին աւար բազում, և զփիղսն և զամենայն ոյժ զօրութեան նոցա։ Ձերբակալ արարեալ զԴատաբէն Վաչէ սպարապետն և քաջն Վահան Ամատունի՝ ածէին զնա առաջի մեծի թագաւորին Խոսրովու, և քարկոծ առնէին զնա քարամբք իբրև զայր՝ որ աշխարհի և գնդի և զօրաց տեառն իւրոյ գաւաճան լեալ իցէ։ Եւ զազգ նորա և զկին և զորդիս գտանէր յամրոցի առ իշխանին Ռշտունեաց յանուանեալն յԱղթամար կղզւոջ Վաչէ սպարապետն, և ի նաւ ելեալ, անցեալ ի կղզին՝ առհասարակ ոչ զէգ թողոյր և ոչ զարու։ Եւ այսպէս բարձաւ ազգատոհմ նախարարութեանն այնորիկ, և զտուն նոցա յարքունիս կալան» (Բուզ. Գ. Ը)։ Բուզանդ կը յաւելու, թէ Պարսք չդադարեցին յարուցանելէ պատերազմ Խոսրովու դէմ, և Խոսրով չէր վըստահ նախարարաց, և չէր հաւատացունէր զնոսա յիւրմէ, բաց ի սպարապետէն Վաչէէ և ի Վահանայ Ամատունւոյ, յորս վստահ էր բոլորովին և յորոց ձեռս էր բոլոր զինուորական զօրութիւն երկրին.—«Բայց յետ այսորիկ ոչ դադարէին Պարսք ի տալ պատերազմ ընդ Խոսրովու արքային. և նա դնէր օրէնս՝ զի մեծամեծ աւագանին, նախարարքն աշխարհակալքն աշխարհատեարքն որ էին բու-

**10.** Աւելի սաստիկ եղաւ Պարսից դէմ Խոսրովու վերջին պատերազմն, յորում մեռաւ սպարապետն Վաչէ և այլք ի նախարարաց.—«Յետ այսորիկ յաւել լինել մարտ խստութեան պատերազմի ի մէջ Պարսից և Հայոց. զի ժողովեցան հասին կուտեցան առնուլ գազատախումբ բանակ նախարարակոյտ զօրացն. և ելանէր տայր ընդ զօրսն Պարսից պատերազմ, և լինէր անհնարին կոտորուած յերկոցունց կողմանցն, և բազում ծախ մեծամեծ աւագանւոյն կոտորելոցն։ Անկանէր ի պատերազմին յայնմիկ մեծ սպարապետն Հայոց Վաչէ, և լինէր ամենայն աշխարհին սուգ անհնարին, զի բազում անգամ էր Տեառն փրկութիւն տուեալ Հայոց ի ձեռն նորա» (Բուզ. Գ. ԺԱ)։ Թէպէտ չթուիր թէ շահեցան ինչ Պարսիկք այս պատերազմաւ՝ սակայն վախճանն ոչ սակաւ աղետալի եղաւ Հայոց համար.—«Բազում անձկայրեաց տրտմութեամբք և տրտասուակաթ ողբովք և ծանրաթախիծ հոգով, մեծաւ կոծով և անհնարին աշխատանօք պաշարեալք՝ զգնացելոցն կարիս մնացելոցն համարեալ սգային» (Բուզ. Անդ)։ Ուստի, որպէս ասէ Բուզանդ՝ ի մխիթարութիւն և ի քաջալերութիւն ազգին որոշեց Վրթանէս ամի ամի կատարել անկելոց տօնն իբրև վկայից, և ոչ նոցա միայն, այլև այնուհետև հայրենեաց համար բոլոր անկելոց ի պատերազմին.—«Զօրս մատուցեալ սփոփէր մեծն Վրթանէս և ասէր. Մխիթարեցարուք ի Քրիստոս, վասն զի որք մեռաննն՝ մեռան յաղագս աշխարհի և եկեղեցեաց և աստուածագործ օրինացն տուչութեան, զի մի գերեալ քանդեսցի աշխարհս։... Որք այսմ ամենայնի փոխանակ զանձինս իւրեանց ոչ խնայեցին՝ ընդ վկայս Քրիստոսի է նոցա համար պատուոյ։ Արդ մի լացցուք զնոսա, այլ պատուեսցուք ընդ նահատակսն, դիցուք ընդ աշխարհ օրէնս, զի ամենայն ոք զնոցա յիշատակ քաջութեանն իբրև Քրիստոսի նահատակաց անխափան կատարեսցէ։... Եւ եդ օրէնս ընդ աշխարհ մեծ քահանայապետն Վրթանէս՝ զնոցա առնել զյիշատակն ամ յամէ, և որք փոխանակ աշխարհին փրկութեան մեռանիցին ի նմանութիւն նոցա՝ եդ կանոն յիշել զնոսա առ սուրբ սեղանն Աստուծոյ ի ժամ պատարագին, յորժամ զանուանս սրբոցն կարգիցեն, և ապա զկնի նոցա զնոցայն, և մնացելոցն յանցելոյն գութ և խնամ կալցին» (Անդ)։

**11.** Սակայն մահուամբն Վաչէի չառնուեցաւ սպարապետութիւնն ի Մամիկոնեանց, այլ անցաւ ի մանուկն Արտաւազդ որդի Վաչէի, զոր իբրև խնամակալ սնուցին Արշաւիր Արշարունի և Անդովկ իշխան Սիւնեաց, որ էին փեսայք Մամիկոնեանց.—«Սակայն զՎաչէի զօրավարի փոքրիկ մանկիկ մի... ի հայրենի բարձ գահուն մատուցանէին, որում անուն էր... Արտաւազդ։ Առաջի թագաւո-

րին զՀօրն պատիւն ի գլուխն դնէին, և զսպար ապետութեանն նորա տեղի. զի կարի որդի վաստակաւորի էր և վաստակաւոր ազգէ, զի այլ յազգին ոչ գտաւ հուժկու, զի ի մեծ պատերազմին մեռան: Եւ զզօրավարութեանն զգործ յանձն առնէին Արշաւրայ Կամսարականի իշխանին Շիրակայ և Արշարունեաց, և Անդովկայ իշխանին Սիւնեաց, զի նոքա փեսայք էին տանն Մամիկոնեան տոհմին: Եւ հրաման եառն մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս հանդերձ թագաւորաւն Արշաւրայ և Անդովկայ՝ սնուցանել զպատանեակն զԱրտաւազդ, զի կացցէ ի տեղի նախնեացն իւրոց և հօր իւրոյ, և գործ քաջութեան գործեսցէ ամենատեառն Քրիստոսի և առաջի իւրոց մարմնաւոր բնակ տերանց Արշակունեաց քաջ արանց, և տան և կենաց, և խնամակալ լիցի այրեաց և որբոց» (Անդ):

**12.** Ցետ սակաւուց (343) մեռան Խոսրով և Վրթանէս.— «Ապա յետ այսորիկ փոխեալ լինէր քաջ արանցն աշխարհաշէնն Խոսրով, թագաւորն Հայոց Մեծաց: Ժողովեալ, աշխար եդեալ՝ լացին ամենայն սահմանք աշխարհաց գաւառաց Հայոց Մեծաց, և տարան առ իւր նախնիսն յԱնին, յԵկեղեցագաւառն Դարանաղեաց: Եւ յետ սորա փոխեցաւ ևս յաշխարհէ մեծ քահանայապետն Վրթանէս. և ժողովեցան ամենայն աշխարհն Հայոց, և մեծաւ պաշտամամբ, սաղմոսիւք և երգովք հոգևորօք, կանթեղօք և մոմեղինօք և խնկածու հոտովք, արքունական կառօք զսուրբն Վրթանէս, անհնարին բեկմամբ վասն իւրեանց յայնմ ի հոգևոր վարդապետութենէն որբ մնալոյ՝ մեծաւ լալեաց տրտմութեամբ մինչև ի գեւղն Թորդան ի Դարանաղեաց գաւառն յուղարկէին: Եւ անդ առ մեծի հայրապետին Գրիգորի զսորա սուրբ ոսկերսն հանգուցանէին, և զմշտակատար զսորա կենդանի յիշատակն ի վերայ կատարեալ դառնային» (Բուզ. Գ. ԺԱ):

**13.** Ինչպէս կը տեսնուի ցարդ պատմուածներէն՝ ի մահուանէն Տրդատայ և այսր Հայք մնացին առանձինն, և իւրեանց զօրութեամբ միայն դէմ դրին այնչափ դժուարութեանց: Զմիջամտութենէ Հռոմայեցւոց յերս Հայոց Տրդատայ յաջորդաց Խոսրովու և Տիրանայ ժամանակ՝ չիք յիշատակութիւն ո՛չ յարտաքին ժամանակակից պատմութեան և ոչ ի մերումն: Թէպէտ պատերազմն ընդ Շապհոյ հրատարակուեցաւ Կոստանդայ կայսրութեան յաջորդ տարին (338)—քանզի այն տարին էր որ Շապուհ, հակառակ Գաղեբեան դաշանց մտնելով ի Միջագետս պաշարեց զՄծբին, բայց չկարելով վճարել ինչ՝ դարձաւ յետս,—սակայն կռիւն յառաջ կը տարուէր երկուստեք թուլութեամբ, քանզի Շապուհ էր ի կռուի ընդ արևելեան դրացեաց իւրոց, Հոնաց և Մազքթաց, և Կոստանդ յարև-

մուտս ընդդէմ ապստամբաց, Մագնենտիոսի և այլոց։ Արդարև Տաւպուհ, կամ մանաւանդ գործակալք նորա կը նեղէին և զՀայս ուղղակի կամ անուղղակի, բայց սոցա չէր մարթ յուսալ օգնութիւն ի Հռոմայեցւոց՝ իրաց այն վիճակին մէջ։ Բուզանդ որ այնպէս նախանձաւոր է ի պատմել որ և իցէ օգնութիւն Հռոմայեցիներէն եղած առ Հայս՝ չյիշեր ամենևին այսպիսի ինչ առ Խոսրովաւ և առ Տիրանաւ, այլ ցուցանէ զՀայս, ինչպէս տեսանք՝ թողեալ յիւրեանս. մինչ Խորենացին կու տայ թագաւորել հռոմէական զօրութեամբ և՛ Խոսրովու և՛ Տիրանայ, հակառակ ակնարկութեան ճառին Յուլիանոսի, որ Կոստանդեայ դարձէն եաքը միայն ի Պաննոնիոյ, այն է 353-ին, որ է հաւանական թուական Արշակայ թագաւորելուն՝ կը դնէ յարդարեալ զիրս Հայոց միջնորդութեամբ Հռոմայեցւոց, ճիշդ համաձայն Բուզանդայ, որ ի սկզբան թագաւորութեանն Արշակայ միայն կու տայ միջամտել Հռոմայեցւոց զինու զօրութեամբ յիրս Հայոց։ Այսպէս Հայք, թէպէտ առանձինն առանց նիւթապէս օգնական ունենալու զՀռոմայեցիս, բաւական զօրացեալք քառասնամեայ խաղաղութեամբն առ Տրդատաւ՝ կարող եղան առ Խոսրովաւ ութ տարի զդէմ ունել ներքին և արտաքին թշնամիներու, մանաւանդ զի Խոսրով էր սիրով ոչ ընդ Վրթանայ միայն, որոյ խորհրդով, ինչպէս տեսանք, կը շարժէր միշտ՝ այլև ընդ հաւատարիմ և քաջ ազգին Մամիկոնէից, որ ըստ Բուզանդայ (Դ. Բ) ի բնէ, «ի նախնեացն կարգաց», ունէին ժառանգութեամբ զսպարապետութիւնն—(զՄամիկոնեանց իբրև զսպարապետաց տես և Բուզ. Գ. Դ, Է, ԺԱ, ԺԸ, և այլ բազում ուրեք)—և ընդ այլ նշանաւոր նախարարս, որպիսի էին Արշաւիր Կամսարական և Անդովկ Սիւնի, խնամիք Մամիկոնեանց, և Ամատունին Վահան։ (Զարմանալի է, որ Խորենացին չտար զսպարապետութիւնն Մամիկոնեանց, և ոչ կը յիշէ իբրև սպարապետ՝ Խոսրովու Կոտակայ, Տիրանայ, Արշակայ և Պապայ քաջ զօրավարներն Մամիկոնեան ցեղէն, որպիսի էին Վաչէ, Արտաւազդ, Վասակ, Մուշեղ. զՎասակ հաւատարիմ և անուանի զօրավարն Արշակայ կը կոչէ «զինակիր արքայի» (Խոր. Գ. ԻԵ), նոյնպէս զերէց եղբայր նորա զՎարդան երկիցս (Խոր. Գ. ԻԲ. և ԻԵ), թէպէտ չէր սա զօրավար. և ոչ Մուշեղայ կու տայ զօրավար անունը (Խոր. Գ. ԼԵ)։

**14.** Առ Տիրանաւ յաջորդաւ Խոսրովու կը քայքայի այս ներքին զօրութիւնը։ Նիւթական զօրութիւնն սկսած էր տկարանալ, և Տիրան, որպէս ասէ Բուզանդ՝ իւր «խօլութեամբն», այն է անմիտ գնացիւք՝ խրտեցոյց ոչ միայն եկեղեցական դասն, այլև նախարարներն, զՄամիկոնեանս իսկ որ էին գլխաւոր նեցուկ մէրու-

թեանն։ Բուզանդ, որ այնպէս առատ է գովեստիւք երբ կը խօսի զԽոսրովայ, գալով առ Տիրան՝ բոլորովին կը փոխէ լեզուն.—«Ցայնմ անմիտ թագաւորութեանն ժամանակի ոչ միայն թշնամիք թշնամեաց, այլև բարեկամք բարեկամաց և ընկերք ընկերաց դաւաճանութիւնս, մատնութիւնս սկսան յարուցանել ի մէջ Հայաստան երկրին, և բիւր և ազգի ազգի թշնամութիւնս գործէին». (Բուզ. Գ. ԺԲ). և այլուր (Գ. ԺԳ)—«Ցայնմ ժամանակի զթագաւորն իւրեանց օրինակ չարի առնէին և նովին օրինակաւ ձևել սկսան և նոյնպէս գործել։... Սիրելիք սիրելեաց, և մերձաւորք մերձաւորաց, և ընտանիք ընտանեաց, ազգականք ազգականաց, խնամիք խնամեաց դնէին գայթակղութիւն։ Անդ էր տեսանել այր ընկերի արեամբք ծարաւեալք, ոգւովք չափ գային վնասուցն, անխրատ վարս և անհանճար միտս ունելով»։ Եւ ի խօսելն զթագաւորութենէն Արշակայ ասէ. «Ի խնդիր ելանէր արքայն Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից, մանաւանդ զի իւր դայեակ և սնուցիչք էին. և երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընդանութիւնն, զի պառակտեալք և քակեալք էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խօլութեանն Տիրանայ» (Բուզ. Դ. Բ)։ Այսպէս առանց օգնութեան Հռոմայեցւոց և իրեններէն լքեալ՝ մատնեցաւ Տիրան ի ձեռս Պարսից, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։

**15.** Խոսրովու յաջորդեց որդին Տիրան (343—349), և Յուսիկ երէց որդին Վրթանայ փոխանակ հօրն կարգէր քահանայապետ.—«Եւ յանցանելն յաշխարհէ թագաւորին Խոսրովու՝ Տիրան որդի Խոսրովու առ զթագաւորութիւն աշխարհացն Հայոց Մեծաց. և ընդ նմին սուրբն երանելի մանուկն Յուսիկ յաջորդեաց զտեղի հայրապետացն Հայոց» (Բուզ. Գ. ԺԲ)։

Հոս հարկ է մեզ սակաւիկ մի զարտուղել մեր պատմութեան կարգէն։ Գիտենք Ագաթանգեղոսէ, թէ յաւուրց անտի Լուսաւորչին, որ առաւ եպիսկոպոսութեան ձեռնադրութիւնը Կեսարիոյ մետրապոլտէն (որոյ թեմ կը թուի թէ էր Հայաստան յառաջագոյն իսկ քան զԼուսաւորիչն)՝ հաստատուեցաւ երկու եկեղեցեաց մէջ պայման, որոյ զօրութեամբ յաջորդք Լուսաւորչին պիտի առնուին ձեռնադրութիւնը Կեսարիոյ մետրապոլտէն իբրև թեմական եպիսկոպոսէ, և փոխանակ այսր՝ յաջորդք Լուսաւորչին պիտի ունենային իշխանութիւն ձեռնադրել եպիսկոպոս և վարել մետրապոլտական իրաւասութիւն փոխանակ եպիսկոպոսին Կեսարու։ Եւ եղև իսկ այնպէս. առաջին յաջորդք Լուսաւորչին մինչև Պապայ

ժամանակ՝ առին ձեռնադրութիւնն ի Կեսարիոյ, ինքեանք կը ձեռնադրէին եպիսկոպոս իբր եպիսկոպոսապետ կամ մետրապոլիտ բոլոր Հայոց, ուստի և կոչուեցան կաթողիկոս, այսինքն ընդհանուր եպիսկոպոս կամ գլխաւոր եպիսկոպոսաց։ Թէպէտ ձեռնադրութիւնն ի Կեսարիոյ առնլոյ սովորութիւնն դադրեցաւ ի վաղուց, ինչպէս պիտի տեսնենք՝ իշխանութիւնն ձեռնագրելոյ եպիսկոպոս և անունն եպիսկոպոսապետ—«Կաթողիկոս»՝ կը մնայ մինչև ցարդ յանձին կաթողիկոսաց Հայոց։ Գալով վերոյիշեալ պայմանին պատմութեան, ի նամակին զոր Ղևոնդիոս եպիսկոպոսն Կեսարու յղեց ընդ Գրիգորի առ Հայս յետ ձեռնադրութեան նորա՝ կը կարդանք այսպէս ըստ Ագաթանգեղոսի. «Եւ հաստատեալ կայցէ վըկայութիւն ի մէջ երկուց կողմանցս, զի պարգևաբաշխութիւն նորոգեալ քահանայապետութեանդ ձերոյդ նահանգիդ առ ի մէնջ կայցէ անշարժ յեկեղեցւոջս Կեսարու, ուստի և հանգերձեցաւ ձեզ պատրաստութիւն շինութեան ձեռնագրութիւն» (Ագաթ. ԾԺԶ)։ Թերևս չհաւատայինք Ագաթանգեղոսի, համարելով աւելաբանութիւն ի շնորհուկս մետրապոլտին Կեսարու՝ եթէ և Բուզանդ ևս չկրկնէր զնոյն։ Երբ թագաւորն Պապ որ հակառակ էր Յունաց, յետ մահուն Ներսեսի դրաւ կաթողիկոս Հայոց զՅուսիկ ոմն առանց ղրկելոյ զնա ի Կեսարիա առնուլ ձեռնադրութիւն՝ բարկացաւ, ասէ Բուզանդ, եպիսկոպոսն Կեսարու, վասն զի առանց հրամանայ նորա եղաւ այն, և առաւ յետս զիրաւասութիւնն կաթողիկոսին, և եպիսկոպոսունք Հայոց սկսան երթալ Կեսարիա առնուլ ձեռնադրութիւն, և Յուսիկ (ոչ որդին Վրթանայ), իբրև եպիսկոպոս արքունի դրան՝ պալատան մէջ միայն ունէր իշխանութիւն հաց օրհնելոյ, այսինքն կատարելոյ պատարագին խորհուրդը.—«Յետ մահուանն հայրապետին Ներսեսի կացոյց թագաւորն Պապ զՅուսիկ եպիսկոպոս, որ էր ի զաւակէ Աղբիանոս եպիսկոպոսին Մանազկերտոյ... առանց հրամանի եպիսկոպոսապետին Կեսարու, և ոչ որպէս սովոր էին տանել ի Կեսարիա ի ձեռնադրութիւն... Եւ ի ցասման եղեալ հայրապետին Կեսարու վասն բանիս այսորիկ՝ արար ժողով եպիսկոպոսաց սինհոդոսին նահանգին Կեսարու, և գրեցին թուղթ ցասմամբ մեծապէս։ Նոյնպէս և գրեցին թուղթ առ թագաւորն Պապ և լուծին զիշխանութիւն կաթողիկոսութեանն, զի նա (Յուսիկ) դրանն արքունի իշխեսցէ զհացն օրհնել, և մի իշխեսցէ ձեռնադրել, և որ միանգամ լինէին եպիսկոպոսք սահմանացն Հայոց՝ երթային ի քաղաքն Կեսարացւոց և անդ լինէին եպիսկոպոսք. բայց որ լինէր աւագ եպիսկոպոսացն՝ ի վերոյ միայն նստէր և հաց օրհնէր թագաւորացն» (Բուզ. Ե. ԻԹ)։

Զայս կը հաստատէ նաև Խորենացին համառօտիւ ըստ իւրում ոճոյ. «Պապ կացոյց զոմն յազգէ Աղբիանոսի, որում անուն Շահակ կոչիւր, զոր կացոյց փոխանակ Ներսիսի՝ առանց մեծի արքեպիսկոպոսին Կեսարու» (Խոր. Գ. ԼԹ). ուստի յայտնի է, թէ «առանց մեծի արքեպիսկոպոսին Կեսարու» գնել կաթողիկոս մինչև ցայնժամ չէր օրէն կամ գէթ սովորութիւն։ Պապայ այս նշանաւոր գործը, որով ազատեց Հայոց եկեղեցին կախմանէն զոր ունէր սա ի Կեսարիոյ և արար անկախ եկեղեցի՝ կ'երևի թէ թուեցաւ հաճոյ Հայոց, քանզի նորընտիր կաթողիկոսաց ձեռնադրութեան համար Կեսարիա երթալու սովորութիւնն կը թուի դադրած այնուհետև, թէպէտ ոչ նոյնպէս պահանջումն եպիսկոպոսին Կեսարու, ինչպէս պիտի տեսնենք։ Եւ թէպէտ հաւանական է, թէ, որպէս ասէ Բուզանդ, ի սկզբան եպիսկոպոսացուք Հայոց, կամ գէթ նոցա մեծ մասն հնազանդելով Կեսարիոյ եպիսկոպոսին հրամանին իբրև թեմական եպիսկոպոսի, ի Կեսարիոյ սկսան առնուլ ձեռնադրութիւն՝ սակայն չիք տարակոյս, թէ այս ևս դադրեցաւ յետոյ ժամանակաւ, մանաւանդ յետ քաղաքական բաժանման երկրին, երբ Յունաց հետ հաղորդակցութիւնն արգելուեցաւ Պարսից բաժնին Հայոց։ Իրաւասութեան այս խնդիրն, ինչպէս նաև հակառակութիւնն որ ծագեցաւ այս պատճառաւ ի մէջ Հայոց և Կեսարիոյ՝ կը հաստատուի մանաւանդ ի Խորենացւոյն, որ ի պատմելն զթշնամութիւնն Կեսարիոյ եպիսկոպոսին, որ արգելեց Սահակայ և Մեսրոպայ վարել իրաւասութիւն Յունաց բաժնին Հայոց վրայ՝ այս հակառակութեան պատճառը կ'ընծայէ ձեռնադրութեան բարձման.—«Ընդ այն ժամանակս եկեալ Մեսրոպայ և բերեալ գնշանագիրս մերոյ լեզուիս… ուսոյց զընաւ կողմանս բաժնոյն Պարսից, բայց ի Յունաց մասնէն, որք ընդ ձեռնադրութեամբն տուգանեցան, վիճակեալ յաթոռն Կեսարու» (Խոր. Գ. ԾԴ)։ Նոյն զՍահակայ ասէ, թէ չընդունուեցաւ ի բաժնին Յունաց իբրև կաթողիկոս այն բաժնին Հայոց.—«Իբրև ետես մեծն Սահակ զայս ամենայն չարիս ի մասինն Պարսից՝ գնաց նա զկողմամբք արևմտից մերոյ աշխարհիս ի բաժնին մասինն Յունաց, և ոչ ըստ արժանեաց իւրոց եգև ընկալեալ» (Խոր. Գ. ԾԷ). և ինքն Սահակ ասէ ի թղթին առ Թէոդոս ըստ Խորենացւոյն. «Ոչ հանդիպեցայ ընդունելութեան յիմում վիճակիս ի հրամանէ վերակացուացս սոցա. այնչափ ատեցեալ զմեզ՝ մինչև զնշանագիրս անգամ ոչ ընկալան զորս եբեր նոյն այր (Մեսրոպ), զոր առաքեցի առ ձեր բարերարութիւնդ, բազում անգամ ճգնեալ դորա յԱսորւոց աշխարհին։ Արդ հաճոյ թուեսցի տէրութեանդ ձերում ոչ անիշխան առնել զմեզ ի մերում վիճակիս, և հրամայել ընդունել զմեզ և զվար-

դապետութիւնս (զուսումն) մեր» (Խոր. Անդ)։ Այս ընդդիմութենէն առ Սահակ կը տեսնուի, թէ նա ևս առած չէր ձեռնադրութիւնն ի Կեսարիոյ։ Սահակ խորագիտութեամբ գտաւ հնարս բերել ի ձեռս զիրաւասութիւնն ի վերայ Հայոց որ ի բաժնին Յունաց, բողոքելով առ կայսր և առ պատրիարքն Կոստանդնուպոլսի Ատտիկոս, որ մտադիւր ընկալաւ Սահակայ բողոքն զմետրապոլտէն, ի մէջ որոյ և պատրիարքին կար իրաւասութեան վէճ։ Ի թղթին կայսեր կը տեսնենք արդարև, թէ կայսրն իշխանաբար կու տայ հրաման ընդունել զՍահակ ի բաժնին Յունաց իբրև թեմական եպիսկոպոս հաւասար մետրապոլտին Կեսարու.—«Գրեցաք զի զքեզ պատուով ընկալցին որպէս զարդարև վարդապետ իւրեանց, հանդոյն արքեպիսկոպոսին Կեսարու» (Խոր. Անդ)։

Ոչ փոքրապացոյց է այս նախկին յարաբերութեան Հայոց ընդ Կեսարիոյ՝ վկայութիւնն Գեղասիոսի Կիզիկենացւոյ (մատենագրի Ե. դարու, պատմչի գործոց ժողովոյն Նիկիոյ), որ զՂեոնդիոսէ Կեսարիոյ եպիսկոպոսէն, զոր կը կոչէ զարդ եկեղեցւոյ Աստուծոյ՝ ասէ, թէ ունէր իշխանութիւն ինչպէս ի վերայ եկեղեցեաց արևելեան մասին Փոքուն Ասիոյ, որպէս Կապադովկիոյ, Գաղատիոյ, Պոնտոսի՝ նոյնպէս Մեծին և Փոքուն Հայոց (առ Գաթըրճ. Տիեզեր. պատմ. Հտ. Բ. 479, ծան. 1), և ի կարգս անուանց եպիսկոպոսաց ժողովոյն կայ՝ և «Արիստակէս Հայոց Մեծաց», զկնի անուան եպիսկոպոսին Կեսարու, իբրև ընդ նորա իշխանութեամբ (Անդ, էջ 480)։

Թէ ի սկզբան, ի ձեռնադրութեան Լուսաւորչին այնպիսի ինչ պայման հաստատուեցաւ ի մէջ Հայոց և Կեսարիոյ վիճակին՝ յայտնի է նաև պատմութենէ։ Առնուլն Լուսաւորչին զձեռնադրութիւնն ի Կեսարեայ՝ է առանց ուրանալոյ։ ԶԱրիստակեայ և զՎրթանայ չկայ յիշուած թէ գնացին ի Կեսարիա։ Զայսանէ համառօտիւ միայն կ'անցնի Բուզանդ. զԱրիստակեայ ասէ, թէ «Հօրն էր գործակից և եպիսկոպոսակից» (Բուզ. Գ. Բ), և զՎրթանայ ասէ միայն. «Յաւուրս սորա (Խոսրովու) եկաց և եղև քահանայապետ յաթոռն հօրն, փոխանակ հօրն իւրոյ և եղբօրն իւրոյ երէց որդին Գրիգորի Վրթանէս» (Բուզ. Գ. Գ)։ Ագաթանգեղոս ասէ զԱրիստակեայ, թէ Լուսաւորիչ ձեռնադրեց զնա եպիսկոպոս փոխանակ իւր ի հրամանէն Տրդատայ.—Ապա աղաչեաց երանելի թագաւորն Տրդատ զսուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր զի ոչ հաւանեցաւ գալ և շրջել ընդ նմա և սիրեաց զմենաւորութեան կեանս՝ ձեռնադրեսցէ տացէ նմա եպիսկոպոս զսուրբ որդին իւր զոր ետ ածել ինքն, զԱրիստակէս. զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր... և յետ նորա կալաւ զտեղի հայրենեացն, անդէն նստաւ յաթոռ կաթողի-

կոսութեան Հայոց» (Ագաթ. ՇԻԳ)։ Եթէ չգնաց Արիստակէս ի Կեսարիա՝ թերևս պատճառ այն էր, զի արդէն ձեռնադրեալ էր նա եպիսկոպոս հօրմէն, ուստի և չունէր պէտս երթալ ի Կեսարիա ձեռնադրութեան համար։ Իսկ զՎրթանայ ասէ Ագաթանգեղոս, թէ էր երէց. «Վրթանէս որ յաշխարհակեաց կեանս էր, որ ապա և նա յաշտիճան պաշտաման եկաց յերիցութեան» (Ագ. ՇԻԳ), և թէ գնաց եպիսկոպոսութեան համար ի Կեսարիա, թէ և սա առ կենդանութեամբ հօրն ձեռնադրեալ էր եպիսկոպոս՝ չէ յայտ։ ԶՅուսկանէ, զորդւոյն և զյաջորդէն Վրթանայ ասէ Բուզանդ, թէ ղըրկուեցաւ ի Կեսարիա յարքայէն Տիրանայ, և կը յաւելու՝ «ըստ սովորութեան օրինակին».—«Գումարեաց (թագաւորն Տիրան) ընդ նմա զմեծամեծ նախարարսն, ըստ սովորութեան օրինակին,… զի նըստուսցեն զերանելին Յուսիկ յաթոռ հայրենական կառսն, խաղասցեն գնասցեն ի սահմանակիցս իւրեանց ի մայր քաղաքայն Գամրաց ի Կեսարիա…։ Գնացին ի քաղաքն Կեսարացւոց, ետուն ի կաթողիկոսութիւն զՅուսիկն ձեռնադրել» (Բուզ. Գ. ԺԲ)։ Նոյնպէս կը պատմէ նոյն պատմագիր զՓառէնայ որ յաջորդեց Յուսկան. «Յայնմ ժամանակի մրժանի համարեցան զՓառէն ումն երէց… և առաքեաց զնա թագաւորն պատարագօք և հրովարտակօք և ճոխ իշխանօքն… ի մայրաքաղաքն Գամրաց ի Կեսարիա, և անդ ձեռնադրեցին զնա ի կաթողիկոսութիւն Հայոց Մեծաց» (Գ. ԺԶ)։ Յետ նորա զյաջորդէն նորա զՇահակայ ասէ նոյնպէս. «Ապա միաբան խորհեցան աշխարհօրէն խորհուրդ, եթէ ում պարտ իցէ զհայրապետութեանն զկաթողիկոսութիւնն ունել. ապա հաւանեցուցին զՇահակ ումն անուն ի տոհմէ զաւակին Աղբիանոս եպիսկոպոսին, և առնեն ընդ նմա տասն նախարարս, և յուղարկեցին զնա մեծամեծ պատուով յերկիրն Գամրաց ի մեծ քաղաքն Կեսարիա, և անդ ձեռնադրեն զՇահակն ի կաթողիկոսութիւն Հայոց Մեծաց» (Գ. ԺԷ)։ Նոյն Բուզանդ զՆերսիսէ ասէ. «Ապա գումարեցին զիշխանսն մեծամեծս, զի առցեն զցանկալին Ներսէս և գնասցեն ուր սովոր էին զհայրապետսն ածանել… զնոսա զամենեսին կազմեցին և արձակեցին բազում ընծայիւք և մեծամեծ պատարագօք և հաւատարիմ հրովարտակօք առ կաթողիկոսն Եւսեբիոս յերկիրն Գամրաց, ի մայր քաղաքացն նոցա ի Կեսարիա, զի ձեռնադրեսցեն անդ զսուրբն Ներսէս կաթողիկոսութիւն Հայոց Մեծաց» (Բուզ. Դ. Դ)։ Այնչափ մեծ համարուած էր առաքումն ի Կեսարիա ի կաթողիկոսութիւն՝ որ միշտ երևելի իշխանք կը ղրկուէին ի միասին, կամ ընդ գլխաւորութեամբ մեծի ուրուք նախարարի։ Այսպէս Յուսկան հետ գացին երկոտասան նախարարք, որոց գլխաւորն էր «մեծ հազարա-

պետն», որ էր հաւանականապէս իշխանն Գնունեաց։ Ընդ Փաւստի զրկուեցան «մեծ զօրավարն Հայոց Վասակ ի Մամիկոնեան տոհմէն, Անդովկ Սիւնի և Արշաւիր Կամսարական, որ էին արդարև, որպէս ասէ Բուզանդ՝ «մեծ և գլխաւոր նահապետք», հանդերձ այլ ևս տասն նախարարօք ի պատուականաց, որպէս ասէ։ Զհահատ տարաւ Հայր իշխանն մարդպետութեան, այն է ներքինապետն Հայոց, հանդերձ իշխանաւ Գարդմանայ ձորոյն, որ յաւագաց կը համարուէր, հանդերձ ուրիշ տասն նախարարօք։ Իսկ Ներսիսի հետ գնացողներն էին նոյնպէս «Հայր իշխանն մարդպետութեան և Բագարատ մեծ իշխանն ասպետութեան», հանդերձ այլ ևս վեց իշխանօք, որոց ամենքն էին երևելի, ինչպէս Ծոփաց, Ռշտունեաց, Սիւնեաց, Շիրակայ և Արշարունեաց, միւս Ծոփաց և Ամատունեաց իշխանք։ Այսպէս մեծ էր պատիւ կաթողիկոսաց առ Հայս։

Յուսիկ որ այնպէս մեծ պատուով զրկուեցաւ ի Կեսարիա՝ նոյնչափ մեծ պատուով ընդունուեցաւ ի դարձին ի թագաւորէն. —«Ինքն արքայն, ասէ Բուզանդ, ընդ առաջ ելանէր նմա ի դաշտն յայնկոյս գետոյն Տափերն կամրջի (Արտաշատու) ամենայն բանակօքն բազմութեամբք. ապա ողջոյն տուեալք միմեանց, անցեալ ընդ կամուրջն Տափերայ, մտեալ ի քաղաքն մեծ յԱրտաշատ՝ յեկեղեցին կաթունային և նստուցանէին զցանկալի մանուկն Յուսիկ յաթոռ հայրապետական» (Բուզ. Գ. ԺԲ)։

**16.** Նկարագիր մանուկ կաթողիկոսին առ Բուզանդայ է արժանի յիշատակութեան. «Աւուրբք, ասէ, մանուկ, տիօք առոյգ և բարձր հասակաւ, գեղով երեսաց սքանչելի և չքնաղ, զի այլ ոչ գտանէր նման նմա. սուրբ և պայծառ հոգւով. ամենևին ոչինչ զբաղեալ ընդ աշխարհ, իբրև զքաջ սպառազէն Քրիստոսի, իբրև զախոյեան նահատակ... ակն առնուլ կամ աչառել մարդկան բնաւ ամենևին ոչ գիտէր, այլ զբան Հոգւոյն սրբոյ սուսեր ածեալ ընդ մէջ իւր կրէր... Այնչափ էր երկիւղած ի Տեառնէ, զի զսէր և զահ թագաւորին առ ոչինչ համարէր.... Համապազ ընդդիմացեալ լինէր երանելի հայրապետն Յուսիկ... և այս մարտ պատերազմի էր սորա առ հասարակ ընդ ամենեսեան։ Իբրև օր մի յաւուրց տարեկան դիմեաց գալ թագաւորն Տիրան հանդերձ այլովք աւագանւովն մտանել յեկեղեցին՝ նա ընդդէմ բարբառեալ ասէր. Չես արժանի, հէ՞մ գաս, մի գար ի ներքս։ Վասնորոյ անդէն ի ներքս քարշէին զնա յեկեղեցւոյն։ Բրածեծ եղեալ ջախջախեալ քահանայապետն Աստուծոյ սուրբ երանելի մանուկն Յուսիկ կիսամահ կողկոճեալ ընկեցեալ լինէր։ Զոր բարձեալ պաշտօնէիցն դրան եկե-

ղեցւոյն ի Բնաբեղ բերդէն արքունի մեծ Ծոփաց գաւառին՝ եկին բերին ի գաւառն Դարանաղեաց ի գեւղն Թորդան, և անդ ոչինչ յետ բազում աւուրց հանգեաւ, և եդաւ մօտ առ Գրիգորի ընդ հարս իւր» (Բուզ. Անդ)։ Այսպէս, ըստ Բուզանդայ՝ առաքելական եռանդն մանուկ կաթողիկոսին եղաւ պատճառ մահուան նորա։ Այս չէ անհաւանական, սակայն կար ուրիշ պատճառ օխութեան ի մէջ թագաւորին և Յուսկան։ Ի նմին Բուզանդայ գիտենք, թէ Տիրան յառաջ քան զթագաւորութիւնն կը սնուցանէր զՅուսիկ, որում և տուաւ իսկ զդուստր իւր կնութեան, որպէս յայտ է՝ յառաջ քան զկաթողիկոսութիւնն։ Յուսիկ, որոյ աւորժակին համաձայն չէր ամուսնական կեանք, և երեսս առնելոյ վասն յանձն առած էր ամուսնութիւնը՝ զղջացաւ, և յետ մի անգամ մերձենալոյ ի կինն՝ զատուեցաւ անկողնով, բարեպաշտ իմն եռանդով, որ մանաւանդ քրիստոնէութեան այն դարերուն մէջ՝ հրաժարիլ ի մերձաւորութենէ կանանց կու տար համարել առաւել աստուածահաճոյ քան կեալ յամուսնութեան։ Զիարդ և իցէ՝ այս պատճառաւ ծագած կը թուի գժտութիւն մեծ ի մէջ երկուց խնամեաց։ Եթէ զեռանդն Յուսկան համարինք ևս գովելի ըստ մտաց ժամանակին՝ ազգականաց հարսին և նորին իսկ, ի վեր քան զամենայն աղջկան հօր դժկամակութիւնը, որ հաւանական է թէ էր այս պատճառաւ՝ չենք կրնար գտնել անիրաւ։ Վերջապէս կը մեռնի կինն, թերևս առ վշտին և առ սրտցաւութեան, որ չէր անընական այն գրեթէ բռնի զրկման համար ամուսնական յարաբերութենէն։ Ահա բանք Բուզանդայ.—«ԶՅուսիկ սնուցանէր Տիրան որդի թագաւորին Խոսրովու, և ետ արքայորդին Տիրան զդուստր իւր կնութիւն Յուսկանն, որդւոյ Վրթանիսի։ Այլ լոյր նա և ազաչէր զԱստուած և ապաշխարէր մեծաւ տառապանօք, զի յամուսնանալն բռնադատեցաւ ի թագաւորէն իբրև զմանուկ։ Եւ յետ միոյ գիշերոյ ի կինն մերձենալոյ՝ այլ ոչ ևս մերձեցաւ ի նա։ Լաւ համարէր զծառայելն միայն Քրիստոսի. ոչինչ ածէր ընդ միտ զսէր թագաւորին կամ ի նմանէ կուսէ զպատուեալն, կամ զմեծութիւն կամ զընտանութիւն փեսայութեան թագաւորին։ Բայց զի լծշնամացեալ էր տուն թագաւորին ընդ նմա, և մինչդեռ վասն այնորիկ զզուէին զնա աներք նորա՝ մեռաւ կին նորա» (Բուզ. Գ. Ե)։ «Ազատացեալ լինէր Յուսիկ ի բանտրոյն», ասէ Բուզանդ, բայց ոչ նոյնպէս ի հետևանաց որ բերաւ նմա այն աղետալի մահը։ Բուզանդ առ արդարացուցանել զՅուսիկ (որ թէպէտ բարեպաշտ, սակայն վարուած էր առանց խորհրդոյ իբրև պատանի խակ)՝ զհրաժարումն նորա յամուսնական պարտուց կ'ընծայէ

աստուածային իմն տեսլեան, որով որպէս թէ յայտնուեցաւ նմա, թէ որդիքն երկուորեակք որ պիտի ծնանէին այն առաջին մերձաւորութեննէն՝ լինելոց էին չար և անպիտան ի պաշտօն եկեղեցւոյ, և այս եղաւ պատճառ Յուսկան զզջանալոյ ամուսնանալէն. —«Յետ մի անգամ յառաջնում գիշերին մտանելոյ՝ յղացաւ կինն։ Եւ իսկ և իսկ ետես (Յուսիկ) ի տեսլեան զի երկու էին մանկունքն, և ոչ հաճոյ ի պաշտօն Տեառն Աստուծոյ, և զղջացաւ զամուսնանալն... իբրև ոչ եթէ զամուսնութիւնն ինչ աղտեղի համարէր, այլ կասկածէր նա ի տեսլեննէն զոր ետես, եթէ ընդէր բնաւ ի նմանէ այնպիսի զաւակ ծնանիցի» (Անդ)։ Բուզանդ որ հրաշալիս կուտել կը սիրէ, յետ պատմելոյ զայս տխուր տեսիլ՝ կը յաւելու պատմել միւս ևս երկրորդ, որ մխիթարական էր Յուսկան, քանզի հրեշտակ երևելով նմա աւետեց, թէ ուրիշ ազնուազոյն որդիք պիտի ծնանէին նորա զաւակէն.—«Եւ մինչ նա վասն այսորիկ հոգալով կայր յաղօթս առ Տէր՝ երևեցաւ նմա հրեշտակ Տեառն ի տեսլեանն և ասէ ցնա. Յուսիկ, որդի Գրիգորի, մի երկնչիր. զի լուաւ Տէր աղօթից քոց, և ահա ծնցի ի քո զաւակացդ այլ զաւակ. զի լիցին նոքա ի լուսաւորութիւն գիտութեան և աղբիւրք իմաստութեան Հայաստան աշխարհիս։ Եւ ի նոցանէ բղխեսցեն շնորհք պատուիրանացն Աստուծոյ, և խաղաղութիւն բազում և շինութիւն և հաստատութիւն բազում եկեղեցեաց ի Տեառնէ նոցա տացի, բազում յաղթութեամբ և մեծաւ զօրութեամբ, և բազում մոլորեալք դարձցին ի ճանապարհս ճշմարտութեան, որով և Քրիստոս բազում լեզուօք փառաւորեսցի նոքօք։ Որք սիւնք եկեղեցեաց լինիցին, և մատակարարք բանին կենաց, և հիմունք հաւատոց, պաշտօնեայք Քրիստոսի և արբանեակք Հոգւոյն սրբոյ, զի ուստի հիմն իցէ շինուածոյն՝ և կատարն անտի լինիցի։ Եւ բազում տունկք պտղաբերք և շայեկանք և օգտակարք ի հոգևոր դրախտին ի նոցա մշակութեանն աջոյն տնկեսցին և ընկալցին զօրհնութիւն յԱստուծոյ։ Իսկ որ ոչն կամիցին տնկել նոքօք և ի նոյն հոգևոր ցօղոյն գիտութենէ ըմպել՝ խոտան գտանիցին մերժեալք յանէծս. և վաղվաղ նոցա լիցի այրումն հրոյն։ Բազում անգամ վասն Տեառն լինիցին նոքա ի հեռ և ի նախանձ յանարժանացն. այլ կացցեն ի հաւատս անշարժ իբրև զվէմ, և յաղթեսցեն նոցա համբերութեամբ բազմաւ։ Եւ յետ նոցա թագաւորեսցէ ստութիւն յապարասան, յանձնասէր, յարծաթասէր, ի մտախաբ, յանպատսպարան, յանպիտան, ի սուտակ և ի բանսարկու մարդկանէ. և ապա եթէ ոք գտցի որ արասցէ ունել զուխտ հաստատութեան հաւատոյ՝ հազիւ հազիւ» (Բուզ. Գ. Ե.)։ Հրեշտակին յոգնակի խօսելէն,

զգաւակաց և ոչ զզաւակէ, կը տեսնուի թէ այս տեսլեան սանգծումը թարգմանչէն է և ոչ ի Բուզանդայ, քանզի կ'ակնարկէ ոչ զՆերսէս և եթ, զոր միայն կարէր գիտել Բուզանդ, այլ և զՍահակ, նա թերևս և զժամանակն Վարդանանց։

**17.** Յուսկան ծնան արդարև երկու որդիք, այսինքն երկուորեակք, Պապ և Աթանագինէս, որք փոխանակ նուիրելոյ զանձինս ի պաշտօն եկեղեցւոյ ըստ նմանութեան հօրն և հաւուն իւրեանց՝ յետ առնլոյ ձեռնադրութիւն սարկաւագութեան՝ հրաժարելով մըտան ի զինուորութիւն և առին թագաւորին քորերը։ Անուն կընոջն Պապայ էր Վարազդուխտ որ մնաց անորդի, և Աթանագինեայ կնոջ անունն էր Բամբիշն, որ եղաւ մայր մեծին Ներսեսի։ Եթէ պարտ է հաւատալ Բուզանդայ՝ այնպէս չար էին Պապն և Աթանագինէս, որ անգամ մը մինչ Աշտիշատու գիւղն էին, ուր էր մայր եկեղեցին շինեալ ի սրբոյն Գրիգորէ (Ագաթ. ձԺԵ), կ'ուտէին և կ'ըմպէին մինչև արհամարհել և պղծել այն սուրբ տեղերն անառակութեամբ՝ եղան կայծակնահար, կամ, բանիւ Բուզանդայ՝ զարնուեցան հրեշտակէ։ Բուզանդ ըստ իւրում զուարթ և միամիտ ոճոյ՝ մանր կը յօրինէ այն դժբախտ ամուսնութեան պտուղներուն վարքը և մահը.—«Եւ ծնաւ կինն (Յուսկան) երկուորիս, և կոչեցին զանուն առաջնոյն՝ Պապ, և զերկրորդին՝ Աթանագինէս։... Սոքա ճանաչէին ստահակք և անխրատք, որք ոչ հօրն իւրեանց նմանեցին միտ եդեալ, և ոչ մեծին Գրիգորի յառաքինութիւնսն ուշ եդին,... այլ ժամանակի դարուն նմանեալ, ակամայ առեալ զձեռնադրութիւն սարկաւագութեան՝ հարբին զաւանդն հոգևոր, առին ևս իւրեանց կանայս գքօրս թագաւորին, և պանձացեալք յիւրեանց յանցաւոր սնոտի ի մարմնաւոր տոհմականութիւն ազգականութեանն՝ զզինուորական զվարսն ընտրեցին։... Բայց անուանք կանանց նոցա էին—անուն կնոջն Պապայ՝ Վարազդուխտ, նոքա անզաւակ անորդի ելին յաշխարհէ. անուն կնոջն Աթանագենի՝ Բամբիշն. ի սոցանէ ծնաւ այր սքանչելի և զարմանալի Ներսէս, որ առ յապայն եկաց քահանայապետ։ Այլ ինքեանք զամենայն աւուրս կենաց իւրեանց ի մեծի յանդգնութեան էին։ Եւ էին նոքա (յաւուր միում) յերկրին Տարօնոյ յաւանին Աշտիշատ, ուր զառաջինն էր շինեալ եկեղեցին ի հաւույն նոցա Գրիգորէ։ Անդ ի բազում հատեալ յարբշռութիւն՝ զԱստուծոյ տաճարաւն այլն առնէին. մտանէին յեպիսկոպոսանոցն որ էր անդ, և ըմպէին անդ գինի բոզօք և վարձակօք և գուսանօք և կատակօք, զսուրբ և զնուիրեալ տեղեօքն քամահեալ։ Եւ մինչ էին յուրախութեան մեծի բազմեալք՝ յանկարծակի հրեշտակ Տեառն երևեցաւ ի նմանութիւն

փայլատական, և հարեալ սատակէր զերկոսեան զեղբարսն միան-
գամայն ի բազմականի անդ։ Եւ այլ մարդիկն որ տաճարակիցք
էին, ուրախակիցք և բազմականակիցք՝ առհասարակ թողին և փա-
խեան։... Եւ Պապն և Աթանագինէս այսպէս սատակեցան, և
դրունք տաճարին ի բաց կային, և ոք հուպ չիշխէր երթալ, մին-
չև նեխեցան մարմինք նոցա և կողոպտեցան, և յօդկեցան քակե-
ցան լուծան ի միմեանց, ցրուեցան ոսկերք նոցա։ Եւ բազում ա-
միսք անցանէին ի վերայ իրացն, ապա իշխեցին մտանել ժողովել
բառնալ հանել անտի զոսկերս նոցա, և տանէին զնոսա լռիկ ցա-
մաքեալ զկճղացեալ զոսկերս նոցա և թաղէին յայգւոջն եկեղեցւոյն
որում Ագարակն կոչեն» (Բուզ. Գ. Ե, ԺԷ, ԻԹ.)։ Որչափ և չափա-
զանց համարինք Բուզանդայ պատմութիւնն զՊապայ և զԱթանա-
գինեայ՝ սաչափ գոնէ ճշմարիտ է, թէ վարք և գործք այս երկու
ժառանգորդաց տան Լուսաւորչին չէին կրնար գոհացունել կղերը,
որ յետ փորձելոյ վերջին փորձը, տալով նոցա աստիճան սարկա-
ւագութեան՝ չհամարձակեցան տալ միում ի նոցանէ կաթողիկո-
սութեան մեծ պաշտօնը։ Եւ որովհետև բաց յերկուց անտի չկար
չափահաս ոք ի քահանայապետութիւն՝ ընտրեցաւ յաշակերտաց
անտի Լուսաւորչին ծերունին Դանիէլ, զորոյ զպատմութիւնն կը
համառօտէ Բուզանդ այսպէս.

18. «Ոչ այլ ոք ի նմին տանէ զաւակին Գրիգորի գոյր որ
զառաջնորդութիւն գլխաւորութեան քահանայապետութեանն յա-
ջորդէր։ Բայց դեռ ևս կենդանի էր ծերունի սուրբն, մեծ քորեպիս-
կոպոսն Դանիէլ, այր սքանչելի։ Աշակերտ եղեալ էր սա մեծին
Գրիգորի։ Էր ազգաւ ասորի և ունէր զաստիճան աթոռոյն գլխա-
ւորութեան Տարօնոյ». և կը թուէ կարգաւ նմա յանձնուած տեղե-
րը. «նախ, ասէ, մեծն և առաջին եկեղեցին ի մայր եկեղեցեացն
ամենայն Հայաստանեայց, (զոր ի գլուխն Գ. կ'անուանէ «Եկեղեցի
Աշտիշատու»), նոյնպէս և ի ներքոյ քան զնա մարգարէանոցն Յով-
հաննու, (զոր հոն Գլ. Գ. կը կոչէ «մարգարէարան մատուռն Յով-
հաննու»), նոյնպէս մօտ ի տուն Տեառն (յեկեղեցին)՝ հանգիստ
առաքելոցն», (զոր «Առաքելարան Տեառն աշակերտացն» կ'անուանէ
հոն)։ «Այս տեղիքս, ասէ, սմա (Դանիէլի) էին յանձն հանդերձ գա-
ւառօքն»։ Ըստ Բուզանդայ՝ Դանիէլ էր «վերակացու», այսինքն առաջ-
նորդ ոչ միայն այս ամենայն եկեղեցեաց Տարօնոյ, այլ և «տեսուչ
և հոգաբարձու (այցելու) ամենայն եկեղեցեացն Հայոց Մեծաց»։ Դա-
նիէլ ըստ նոյն պատմագրի կը վարէր անապատական կեանք, բայց
ժամանակ ժամանակ կ'իջնէր այցելութիւն իւր եկեղեցիներուն.—
«Եւ բնակութիւն կայենիցն (նորա) յանմարդի լերինս էր. միահան-

դերձ, մաշկանափորան, սանդաղաւոր, և կերակուր իւր արմատք բանջարոց, և գաւազան անգամ ընդ ինքեան ոչ ունէր, այլ—կը յաւելու—զանսչութիւն մարդկան պիտոյից ոչ երբէք անփոյթ առնէր, և կայեանք տեսչութեան նորա», այսինքն իւր պաշտօնական տեղն, «յորժամ յանապատաց ի շէնս իջանէր վասն գործոյ Աստուծոյ՝ ի գլխաւոր տեղիս եկեղեցեացն լինէր։ Եւ յաճախ յակն աղբերն ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն Հերակղեայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի որում Ցուլն անուանեալ կարդան, ի բազնին տեղւոջէ ի բացագոյն իբրև քարընկէց ի մի ներքոյ կուսէ, ի դոյզն ծործորակին, ի սակաւ անտառակին, ի հացուտ պուրակին, որում անուն տեղւոյն իսկ Հացեացն դրախտ կոչեն։ Այս այն աղբեւրն է, յորում առնէր յայնժամ ևս վաղ մեծն Գրիգոր զմկրտութիւնսն զօրացն բազմաց (Ագաթ. ՇԺԶ. ՇԺԸ.)։ Ցայնմ տեղւոջ էր սորա կայեանք խցկան օրըոյն Դանիելի. էր դարափոր արարեալ ի բնակութիւն, և յայնմ տեղւոջ զդիտաւորութիւն (տեսչութիւն) այցելութեանն կատարէր»։

Բուզանդ ըստ իւրում սովորութեան ինչպէս ամէն սուրբ անուանեալ անձն՝ նոյնպէս զԴանիէլ կը փութայ երևցունել իբրև մեծ սքանչելագործ։ Դանիէլ կօշկօք կ'երթար ջուրերու վրայ անթաց. երբ կամէր ճանապարհորդել ի ձմերան՝ ձիւները կը հալէին յանկարծ, և գետինը լինէր ցամաք. եթէ հեռու ուրեք երթալ կամէր՝ յանկարծ կը գտնէր զանձն հոն՝ ուր դէմ եդեալ էր երթալ. և ոչ այսչափ միայն. Դանիէլ կը բժշկէր հիւանդներ, կը յարուցանէր մեռելներ և կը գործէր քան զսոսա աւելի մեծ նշաններ։ Կը հարցունենք սակայն, թէ քան զմեռեալս յարուցանել ի՞նչ մեծ նշան կայ, զորմէ լռութեամբ կ'անցնի Բուզանդ։ Զիարդ և իցէ՝ տեսնենք բուն բանս Բուզանդայ. «Սա, ասէ, առնէր նշանս և զօրութիւնս մեծամեծս յանուն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։ Կօշկօք քայլելոյն գնայր ի վերայ ջուրց գետոց, և ո՛չ թանայրն (ոտքն)։ Եւ յաւուրս ձմերայնոյն, յորժամ կուտեալ դիզեալ էր բազմութիւն թանձրութեան ձեանցն ի վերայ ձմերային լերանց, և նա յայնպիսի ժամանակի կամէր ուրեք երթալ ի պէտս՝ յանկարծօրէն ձիւնն ցամաք արջն լինէր առաջի նորա։ Եւ եթէ կամէր ի հեռաստան ուրեք երթալ՝ իբրև զփայլակն սլացեալ լինէր անաշխատ, իբրև թռուցեալ՝ յոր կամէրն երթալ ի տեղին՝ յանկարծօրէն անդ գտանէր։ Յարուցանէր զմեռեալս, առնէր և բժշկութիւնս հիւանդաց, և այլ և՛ս մեծ նշանս և զօրութիւնս քան զնոյնս գործէր, զորս ոչ բաւեսցէ ոք ընդ գրով նշմարանաց փա-

կեր» (Բուզ. Գ. ԺԴ.)։ Այս Դանիէլ է որ կոչուեցաւ ի կաթողիկոսութիւն յետ Յուսկան։

**19.** Բուզանդ յառաջ քան պատմելն զկոչումն Դանիէլի ի կաթողիկոսութիւն՝ կը դնէ զթագաւորէն, զնախարարաց և զազգէն երկայն իմն մեղադրութիւն իբրև նկարագիր բարուց ժամանակին։ Մեր կորովի պատմագիրն համեմատելով երկու առաջին քրիստոնեայ թագաւորաց ժամանակն Տիրանայ թագաւորութեան ժամանակին հետ՝ չվարանիր կոչել այս վերջինն «անմիտ և անպիտան» (Գ. ԺԳ.), և այլուր (Դ. Բ.)՝ «խօլութեան ժամանակ»։ Եթէ չասէր ևս զայս Բուզանդ՝ չէր մեզ դժուարին իմանալ ի գործոց անտի Տիրանայ։ Այս դժբախտ թագաւորն չունէր ոչ հաւուն իւրոյ Տրդատայ ազգեցութիւնն ի սանձել, և ոչ հօր իւրոյ Խոսրովու հլութիւնն ի լինել օրինակ։ Ցայս թերութիւն Տիրանայ կը նայի մեղադրութիւնն Բուզանդայ։ Յետ ասելոյ, թէ «Թագաւորն Տիրան և այլ մեծամեծ աւագանին նախարարացն և աշխարհն ամենայն ոչինչ ըստ Աստուծոյ կամացն վարս յանձն առեալ իմաստունս գընացեալ լինէին»՝ կը յաւելու. «Զի զթագաւորն իւրեանց օրինակ չարի արարեալ՝ նոքին օրինակաւ ձևել սկսան և նոյնպէս գործել։ Ի հեռ և ի նախանձ ընդ միմեանս, չարակնութեամբ, թշնամութեամբ ոխութեան զմիմեանս խածատել, և նենգել այր զընկեր. և զեղբայր։... Անդ էր տեսանել այր ընկերի արեամբ ծարաւեալ»։ Բուզանդ կը յաւելու ևս, թէ շատ ամօթալի գործերու պէս, նաև հին հեթանոսական պաշտամունք կը կատարուէին գաղտ.—«Եւ զգիցն հնութեան պաշտամունս, ի նմանութիւն պոռնկութեան գործոյն, ընդ խաւար կատարէին, և ոմանք զնոյն իսկ զցանկութիւն պոռնկութեան կատարէին յանձինս իւրեանց»։ Այս ամենայն յառաջ քան զմահն Յուսկան. իսկ յետ մահուն նորա, երբ անառաջնորդ մնացին՝ ևս աւելի.—«Մանաւանդ, ասէ, յորժամ զգլխաւոր առաջնորդն թոպամահ սպանին՝ այնուհետև ըստ կամաց գնային, քանզի ոչ ոք այն գոյր յորոյ խիթային յանդիմանութենէն, և որ նոցա արգել արկանէր գնալ յանօրէն ճանապարհն»։

Այն դարուն Հայոց համար, որ այն ինչ դարձած էին հեթանոսութենէ ի քրիստոնէութիւն՝ կայ կարևոր իմն կէտ ի դիտել։ Ժողովուրդ մը որ չունի բարձր դաստիարակութիւն և փիլիսոփայական հանճար կանոնել իւր առանին և ընկերական կեանքը՝ պարտի ունենալ իւր կրօնական օրինագիրը (code)։ Քրիստոնեան պարտի ունենալ իւր Աստուածաշունչը, ինչպէս մահմետականն իւր Ղուրանը։ Առանց այսպիսի օրինագրի ժողովուրդ մը չկրնար օգուտ քաղել յիւր կրօնից։ Բուզանդ շատ գեղեցիկ կը լուսաւորէ զայս. «Ի

վաղնջուց, սաէ, յորմէ հետէ առին նոքա» (Հայք. «նոքա» կը ցուցնէ թէ օտարազգի է պատմիչն) զանուն քրիստոնէութեանն՝ լոկ միայն երբեւ զկրօնս իմն մարդկութեան, եւ ոչ ջերմեռանդն ինչ հաւատով ընկալան։ Ոչ եթէ որպէս պարտն էր գիտութեամբ յուսով կամ հաւատով, բայց միայն սակաւք որք զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանց՝ էին հասու ինչ այնմ փոքր ի շատէ. իսկ որ արտաքոյ քան զգիտութիւն արուեստին էին այն խառնաղանճ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն եւ կամ շինականութիւնն, եթէ զցայգ եւ զցերեկ նստեալ վարդապետացն եւ ըստ նմանութեան ամպոցն երբեւ զյորդահեղեղ ինչ անձրեւաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի վերայ հոսէին՝ ոչ ոք ի նոցանէն ոչ մի բան եւ ոչ կէս բանի, եւ ոչ գոյզն յիշատակ ինչ եւ ոչ նշմարանս ինչ զոր լսէինն՝ կարէին առնուլ ի միտս։ Կայ թերեւս աւելաբանութիւն ի բանս Բուզանդայ, չէ սակայն օտար ի ճշմարտութենէ. դիտելու արժանի է մանաւանդ, որ Բուզանդ ժողովրդեան անընդելութիւնն քրիստոնէական վարդապետութեանց՝ կ'ընծայէ տգիտութեան նոցա յոյն եւ ասորի դպրութեանց, քանզի այն լեզուաց հմուտք միայն կրնային ընթեռնուլ եկեղեցական գրեան, մանաւանդ հին եւ նոր կտակարանները, զորս չունէին տակաւին Հայք իւրեանց լեզուաւ առ ի չգոյէ հայերէն դպրութեան, եւ այս պակասութիւնն արդարեւ եղաւ պատճառ, որ իբր կէս դար յետոյ առաքելաշնորհքն Սահակ եւ Մեսրոպ այնչափ փոյթ տարին լնուլ այս մեծ թերին հայ ժողովրդեան։ Կորիւն ազգին գիտութիւնը քրիստոնէական վարդապետութեանց յառաջ քան զթարգմանութիւնն Ս. Գրոց կ'ակնարկէ ի պատմութեան գիւտի նշանագրաց եւ թարգմանութեան գրոցն յասելն, թէ «Երկիր որ համբաւուցն անգամ օտար էր (յառաջ քան զթարգմանութիւն Գրոյն) կողմանցն այնոցիկ, յորում ամենայն աստուածագործ սքանչելագործութիւնքն (պատմեալք ի Ս. Գիրս) գործեցան՝ (յետ թարգմանութեան Գրոյն) առ ժամայն վաղվաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր... եւ ամենայն աստուածատուր աւանդութեանցն»։

Հայք յետ դարձին իւրեանց չունենալով քրիստոնէական կրօնից վերաբերեալ գրեան՝ հարկաւ կը սիրէին եւ կ'ուսանէին իւրեանց վիպասանական երգերն. ուստի ըստ մեզ անիրաւ է մեղադրութիւնն Բուզանդայ—«Դեգերեալ մաշէին յանուղղայ կրթութիւն,.. զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք եւ նմին հաւատացեալք եւ ի նոյն հանապազորդեալք»։ Զիք տարակոյս, թէ հեռացնելու համար զժողովուրդն այն հին հեթա-

նոսական յիշատակներէ՝ քրիստոնէական նախանձն ամէն ջան ի գործ դրաւ, յառաջ և յետոյ քան զգիւտն գրութեան, խափանել հին ազգային երգերն որ հեթանոսական ժամանակի ծնունդ էին, տալով ազգին քրիստոնէական առատ գրութիւն, այնպէս որ հին վիպասանութեններէն հազիւ մնացին դոյզն նշխարք, զորս Խորենացին կ'աւանդէ, և այն՝ առասպել անուամբ։

**20.** Գանք այժմ ի պատմութիւն Դանիէլի։ Դանիէլ ըստ խորհրդոյ մեծամեծաց կը բերուի առաջի թագաւորին, առ որում ժողովեալ էին նախարարք, և կ'սկսի երկայն յանդիմանութիւն մի, ուր յետ յուշ առնելոյ նոցա Աստուծոյ մեծ շնորհն, որով հրաւիրեց զնոսա ի լոյս ճշմարտութեան, և նոքա մոռանալով զնա դարձան կռապաշտ նախնեաց մոլորութիւններուն՝ կը յարէ համառօտ պատմական ակնարկութիւն մի, ուր լռելեայն կը յիշուին Թադէոս, Լուսաւորիչն, Հռիփսիմեանք և յաջորդք Լուսաւորչին, յորոց զոմանս սպանած էին, զայլս չարչարած, և փոխանակ անսալոյ խրրատուց և վարդապետաց իւրեանց և պատուելոյ զնոսա՝ անարգեցին, և ի լրումն չարութեան իւրեանց սպանին չարաչար զմանուկ հայրապետն իւրեանց զՅուսիկ։ Ի վախճանի կ'իմացունէ, թէ չէր կարող ընդունել ազգին հրաւէրն ի կաթողիկոսութիւն՝ եթէ չըդառնային բոլոր սրտիւ առ Աստուած։ Այն ինչ բանքն ի բերան էին ծերունի եպիսկոպոսին՝ հրաման ելեալ թագաւորէն՝ անդէն ի տեղւոջն խեղդամահ առնել զնա, և իսկոյն կատարեցաւ հրամանն, թէպէտ շատ ջանացին, ասէ Բուզանդ, նախարարքն՝ յետս կացուցանել զթագաւորն անզգամ խորհրդէն.—«Ապա ժողովեալ մեծամեծք նախարարացն... հաւանեցուցանէին զթագաւորն ածել զծերունին Դանիէլ, զի կացուսցեն զնա իւրեանց գլուխ առաջնորդ։ Եւ յղեցին առ նա զՈմն, իշխանն Սահառունեաց տոհմին և զԱրտաւան զիշխանն Վանանդայ և զԿարէն իշխանն Ամատունեաց տոհմին և զՎարազ իշխանն Դիմաքսենից տոհմին։ Եւ եկին նախարարքն հասին գտին զնա յԵկեղեաց գաւառին, ի գեւղն եկեղեցւոյն ի Թիլն, զի դեռ իմն զգործ մշակութեանն Աստուծոյ գործէր։ Եւ առին զնա և ածին առ թագաւորն Տիրան ի գաւառն Աղձնեաց, ի Բառաէջ աւան։ Եւ իբրև մտանէր առաջի թագաւորին Տիրանայ քորեպիսկոպոսն մեծն Դանիէլ՝ անդէն ի ձեռն առնոյր զկշտամբութիւն յանդիմանութեանն։ Ընդէ՞ր մոռացարուք դուք, ասէ, զԱստուած զարարիչն ձեր, և զգութ նշանացն և խըրատուց և զսքանչելեաց զոր արար առ հարսն ձեր և առ ձեզ, և դարձայք ի մոլորութիւն կռապաշտութեան նախնեացն ձերոց, ի յափշտակութիւնս և յագահութիւնս և ի զրկութիւնս և յաղքա-

տակերութիւնս, ի պոռնկութիւնս, ի նենգութիւնս և ի միմեանս-գրկութիւնս և ի սպանութիւնս։ Կործանեցայք լքայք կասեցէք կաղացայք յարդարութեան ճանապարհաց։ Մինչ դուք զձեր անձինս անգիտս արարեալ էիք ի կորստեանն՝ Նա եկն ի խնդրել զձեզ. դուք փոխանակ երախտեացն ապախտիս հատուցէք. Նախ զձեր զքարոզն և զհրաւիրակն զառաքեալ առ ձեզ (զԹադէոս) սպանէք, և զհետ նորա զնորին նմանին (զԳրիգոր) չարչարեցէք. զկնի սորին եկին բազմութիւնք սրբոց վկայիցն Աստուծոյ (Հռիփսիմեանք).. սակայն և առ նոսա լցէք զսովորութիւն սպանութեանց ամբարշտութեան կամացն ձերոց։.. Եւ յետ այսորիկ ետ ձեզ վարդապետս զսիրելիս իւր.. որք ուսուցիչքն էին ձեր, որք հանապազ աքնէին վասն փրկութեան ոգւոց ձերոց, և արժան էր ձեզ ունել գութ ընդ նոսա. դուք զորդիս և զժառանգս և զգործակիցս և զնմանողս նոցին սպանէք. զսուրբ մանուկն Յուսիկ զհայրապետն զաթոռակալն զվիճակակալն վիճակին Թադէոսի առաքելոյն և զնորին նմանոյն Գրիգորի։... Արդ զի կոչեցէք զիս եկանել գալ առ ձեզ, զոյս ամենայն կամէիք լսել դուք յինէն։ Յղեցէք առ իս, թէ եկ կաց մեզ գլուխ և առաջնորդ։ Զիա՛րդ լինեցիմ գլուխ և առաջնորդ այնոցիկ, որք ոչ դառնայցեն զկնի Տեառն, կամ զիա՛րդ բառնայցեմ զձեռս իմ աղօթիւք առ Աստուած վասն այնոցիկ, որոց ձեռք շաղախեալ են արեամբ սրբոց Տեառն։ Զայս բանս խօսեցաւ սուրբ ծերունին Դանիէլ քորեպիսկոպոսն առաջի թագաւորին Տիրանայ և առաջի իշխանացն, պետացն և ամենայն զօրացն։ Եւ մինչդեռ խօսէր նա զայս ամենայն՝ հիացեալ զարմացեալ թագաւորն միտ դնելով լուռ և եթ կայր։ Եւ եղև իբրև զայս ամենայն լուաւ՝ բորբոքեալ ի բռնաւորութիւն դառնութեան ամբարշտութեան ցասման իւրոյ՝ տայր հրաման անդէն խեղդամահ առնել զնա։ Զոր լուեալ սպասաւորացն կատարեցին զգործ հրամանին վաղվաղակի։ Բայց մեծամեծ նախարարացն աւագանին շատ եդին ի մտի արքային, զի մի կատարեսցէ զչարութիւն կամացն իւրոց. նա առ դառնութեան սրտին ցասման, առ զայրուցս բարկութեանն ոչինչ անսաց նոցա, այլ ճոպան ի փողս եդեալ խեղդամահ արարին զնա։ Այսպէս կատարեցաւ սուրբն Դանիէլ» (Բուզ. Գ. ԺԴ.)։

**21.** Դանիէլի յանդիմանութեան մէջ զոր բերինք համառօտիւ, կայ մաս մը, որ գոգցես գուշակութիւն է ազգին առյապայ պատմութեան.—«Վասն այսչափ ստութեանց ձերոց և պղծութեանց, ասէր Դանիէլ, բարձցէ Տէր զթագաւորութիւնդ ձեր ի ձէնջ. ցրուեսջիք և բաժանեսջիք, և ցրուեսցին սահմանք ձեր որպէս և Իսրայէլ, և անտերունչք և անխնամ և անխնամք լիջիք, և

լեջիք դուք իբրև զխաշինս՝ զի ոչ գուցէ նոցա հովիւ։ Մատնեսջիք իբրև զհօտ ի ձեռս գազանաց, և անկջիք ի փառաց ձերոց, և ի ձեռս օտար թշնամեաց մատնեսջիք դուք ի գերութիւն և ի լուծ ծառայութեան, և ոչ բարձցի երբէք կամ պակասեսցէ լուծ չար սարկութեան ծառայութեանն ի պարանոցաց ձերոց. հաշեսջիք և մաշեսջիք ի ցանկութիւնս ձեր։ Որպէս պատառեցաւ Իսրայէլ, և ոչ կարկատեցաւ՝ սոյնպէս և դուք ցրուեսջիք և կործանեսջիք, և այլք վայելեսցեն ի վաստակս ձեր, և այլք կերիցեն զզօրութիւնս ձեր, և ոչ ոք գտանիցի որ փրկեսցէ զձեզ, և ոչ հաճեսցի ընդ ձեզ Տէր, և ոչ նայեսցի և ոչ փրկեսցէ այլ զձեզ»։ Ցանդիմանելն Դանիելի զՏիրան և սպանութիւն այն պատճառաւ՝ է արդարև ճշմարիտ, այլ թէ յանդիմանութիւնն, զոր կը դնէ Բուզանդ, մանաւանդ մարգարէութիւնն, են բան առ բան Դանիելի՝ չէ ամենևին հաւանական։ Չիք տարակոյս սակայն, թէ զարմանալի հանդիպումն կայ ի մէջ այն մարգարէութեան և ճակատագրի ազգին։ Եւ որովհետև այն իբր մարգարէութեան գլխաւոր կէտերն, ինչպէս բարձումն թագաւորութեան, բաժանումն երկրին, գէթ ըստ մասին ցրուումն ազգին և մատնելն ի ծառայութիւն, եղան առ Յազկերտիւ Ա. (400—421), և առ. Վռամաւ Ե. (421—442)՝ թարգմանիչն Բուզանդայ, որ էր մին ի թարգմանչաց, ականատես վկայ ժամանակին, տալով պատմութեան մարգարէական ձև՝ դրաւ զայն ի բերան Դանիելի։ Այս է բնական և բանաւորագոյն մեկնութիւն այս երկրորդ Դանիէլեան մարգարէութեան։ Այսպիսի յանդիմանութիւն մի հանդերձ իբր մարգարէութեամբ ունինք ի Խորենացւոյն ի վերջին գլուխ Բ. դպրութեան, յետ պատմութեան մահուն Տրդատայ։

**22.** Բուզանդ կը յիշէ ուրիշ տխուր դէպ, որ ուծացոյց ի Տիրանայ զնախարարս, մանաւանդ զՄամիկոնեանս, որ էին թև և թիկունք տէրութեանն։ Ի հնումն ոչ միայն արևելեան, այլև արևմտեան արքունեաց մէջ ներքինիք, որ մեծ ազդեցութիւն ունէին առ թագաւորին իբրև մարդպետք, այսինքն վերակացուք կանանոցին՝ շատ անգամ կու տային գործել թագաւորաց, մանաւանդ տկարագունից, յորոց մին կը թուի թէ էր Տիրան՝ մեծամեծ անիրաւութիւններ։ Ամմիանոս ի գովելն զԵւթեր ներքինի Կոստանդայ, զայր լաւ և իմաստուն՝ ասէ. «Գովեստ զառնէ ներքինւոյ կասկածելի է ի բերան ուրուք, թէպէտ Սոկրատ ոմն իցէ կամ Նումա Պոմպիլիոս որ գովէն, եւ և յետ երդման՝ թէ ոչ այլ ինչ խօսելոց է՝ եթէ ոչ զճշմարտութիւն» (Ամմ.)։ Իբրև զսովորական ներքինիս և ոչ իբրև զԵւթեր էր ըստ Բուզանդայ՝ Տիրանայ ներ-

տակերութիւնս, ի պոռնկութիւնս, ի նենգութիւնս և ի միմեանսզրկութիւնս և ի սպանութիւնս։ Կործանեցայք լքայք կասեցէք կաղացայք յարդարութեան ճանապարհաց։ Մինչ դուք զձեր անձինս անգիտօս արարեալ էիք ի կորստեանն՝ նա եկն ի խնդրել զձեզ. դուք փոխանակ երախտեացն ապախտիս հատուցէք. նախ զձեր զքարոզն և զհրաւիրակն զառաքեալ առ ձեզ (զԹադէոս) սպանէք, և զհետ նորա զնորին նմանին (զԳրիգոր) չարչարեցէք. զկնի սորին եկին բազմութիւնք սրբոց վկայիցն Աստուծոյ (Հռիփսիմեանք).. սակայն և առ նոսա լցէք զսովորութիւն սպանութեանց ամբարշտութեան կամացն ձերոց։.. Եւ յետ այսորիկ ետ ձեզ վարդապետս զսիրելիս իւր.. որք ուսուցիչքն էին ձեր, որք հանապազ աքնէին վասն փրկութեան ոգւոց ձերոց, և արժան էր ձեզ ունել զուխտ ընդ նոսա. դուք զորդիս և զժառանգս և զգործակիցս և զնմանողս նոցին սպանէք. զսուրբ մանուկն Յուսիկ զհայրապետն զաթոռակալն զվիճակակալն վիճակին Թադէոսի առաքելոյն և զնորին նմանոյն Գրիգորի։... Արդ զի կոչեցէք զիս ելանել գալ առ ձեզ, զայս ամենայն կամէիք լսել դուք յինէն։ Յղեցէք առ իս, թէ եկ կաց մեզ գլուխ և առաջնորդ։ Զիա՞րդ լինիցիմ գլուխ և առաջնորդ այնոցիկ, որք ոչ դառնայցեն զկնի Տեառն, կամ զիա՞րդ բառնայցեմ զձեռս իմ աղօթիւք առ Աստուած վասն այնոցիկ, որոց ձեռք շաղախեալ են արեամբ սրբոց Տեառն։ Զայս բանս խօսեցաւ սուրբ ծերունին Դանիէլ քորեպիսկոպոսն առաջի թագաւորին Տիրանայ և առաջի իշխանացն, պետացն և ամենայն զօրացն։ Եւ մինչդեռ խօսէր նա զայս ամենայն՝ հիացեալ զարմացեալ թագաւորն՝ միտ դնելով լուռ և եթ կայր։ Եւ եղև իբրև զայս ամենայն լուաւ՝ բորբոքեալ ի բռնաւորութիւն դառնութեան ամբարշտութեան ցասուման իւրոյ՝ տայր հրաման անդէն խեղդամահ առնել զնա։ Զոր լուեալ սպասաւորացն կատարեցին զգործ հրամանին վաղվաղակի։ Բայց մեծամեծ նախարարացն աւագանին շատ եդին ի մտի արքային, զի մի կատարեսցէ զչարութիւն կամացն իւրոց. նա առ դառնութեան սրտին ցասման, առ զայրուցս բարկութեանն ոչինչ անսաց նոցա, այլ ճոպան ի փողս եդեալ խեղդամահ արարին զնա։ Այսպէս կատարեցաւ սուրբն Դանիէլ» (Բուզ. Գ. ԺԴ.)։

**21.** Դանիէլի յանդիմանութեան մէջ զոր բերինք համառօտիւ, կայ մաս մը, որ գոգցես գուշակութիւն է ազգին առյապայ պատմութեան.—«Վասն այսչափ ստութեանց ձերոց և պղծութեանց, ասէր Դանիէլ, բարձցէ Տէր զթագաւորութիւնդ ձեր ի ձէնջ. ցրուեսջիք և բաժանեսջիք, և ցրուեսցին սահմանք ձեր որպէս և Իսրայէլ, և անտերունչք և անխնայ և անխնամք լիջիք, և

լինջիք դուք իբրև զխաշինս՝ զի ոչ գուցէ նոցա հովիւ։ Մատնեսջիք իբրև զհօտ ի ձեռս գազանաց, և անկջիք ի փառաց ձերոց, և ի ձեռս օտար թշնամեաց մատնեսջիք դուք ի գերութիւն և ի լուծ ծառայութեան, և ոչ բարձցի երբէք կամ պակասեսցէ լուծ չար ստրկութեան ծառայութեանն ի պարանոցաց ձերոց. Հաշեսջիք և մաշեսջիք ի ցանկութիւնս ձեր։ Որպէս պատառեցաւ Խսրայէլ, և ոչ կարկատեցաւ՝ սոյնպէս և դուք ցրուեսջիք և կործանեսջիք, և այլք վայելեսցեն ի վաստակս ձեր, և այլք կերիցեն զզօրութիւնս ձեր, և ոչ ոք գտանիցի որ փրկեսցէ զձեզ, և ոչ հաճեսցի ընդ ձեզ Տէր, և ոչ նայեսցի և ոչ փրկեսցէ այլ զձեզ»։ Ցանդիմանելն Դանիելի զՏիրան և սպանուիլն այն պատճառաւ՝ է արդարև ճըշմարիտ, այլ թէ յանդիմանութիւնն, զոր կը դնէ Բուզանդ, մանաւանդ մարգարէութիւնն, են բան առ բան Դանիելի՝ չէ ամենևին հաւանական։ Չիք տարակոյս սակայն, թէ զարմանալի հանդիպումն կայ ի մէջ այն մարգարէութեան և ճակատագրի ազգին։ Եւ որովհետև այն իբր մարգարէութեան գլխաւոր կէտերն, ինչպէս բարձումն թագաւորութեան, բաժանումն երկրին, գէթ ըստ մասին ցրուումն ազգին և մատնելն ի ծառայութիւն, եղան առ Յազկերտիւ Ա. (400—421), և առ Վռամաւ Ե. (421—442)՝ թարգմանիչն Բուզանդայ, որ էր մին ի թարգմանչաց, ականատես վկայ ժամանակին, տալով պատմութեան մարգարէական ձև՝ դրաւ զայն ի բերան Դանիելի։ Այս է բնական և բանաւորագոյն մեկնութիւն այս երկրորդ Դանիէլեան մարգարէութեան։ Այսպիսի յանդիմանութիւն մի հանդերձ իբր մարգարէութեամբ ունինք ի Խորենացւոյն ի վերջին գլուխ Բ. դպրութեան, յետ պատմութեան մահուն Տրըդատայ։

**22.** Բուզանդ կը յիշէ ուրիշ տխուր դէպ, որ ուծացոյց ի Տիրանայ զնախարարս, մանաւանդ զՄամիկոնեանս, որ էին թև և թիկունք տէրութեանն։ Ի հնումն ոչ միայն արևելեան, այլև արևմտեան արքունեաց մէջ ներքինիք, որ մեծ ազդեցութիւն ունէին առ թագաւորին իբրև մարդպետք, այսինքն վերակացուք կանանոցին՝ շատ անգամ կու տային գործել թագաւորաց, մանաւանդ տկարագունից, յորոց մին կը թուի թէ էր Տիրան՝ մեծամեծ անիրաւութիւններ։ Ամմիանոս ի գովելն զԵւթեր ներքինի Կոստանդայ, զայր լաւ և իմաստուն՝ ասէ. «Գովեստ զառնէ ներքինւոյ կասկածելի է ի բերան ուրուք, թէպէտ Սոկրատ ումն իցէ կամ Նումա Պոմպիլիոս որ գովէն, ևս և յետ երդման՝ թէ ոչ այլ ինչ խօսելոց է՝ եթէ ոչ զճշմարտութիւն» (Ամմ.)։ Իբրև զսովորական ներքինիս և ոչ իբրև զԵւթեր էր ըստ Բուզանդայ՝ Տիրանայ Ներ-

քինապետն, որ հասարակ անուամբ այն պաշտօնին մարդոց՝ կը կոչուէր Հայր, և քսութեամբ եղաւ պատճառ նախարարաց շատերուն կորստեան, յանուանէ Ռշտունեաց և Արծրունեաց, զորս ազգովին տուաւ ջնջել.—«Ցայնմ յանմիտ թագաւորութեանն ժամանակի—են բանք Բուզանդայ—ոչ միայն թշնամիք թշնամեաց, այլև բարեկամք բարեկամաց և ընկերք ընկերաց գաւաճանութիւնս սկսան յարուցանել ի մէջ Հայաստան երկրին: Բայց քան զամենեսին աւելի այր մի անօրէն և այսամուտ, որ աւելի ընդ ազգս նախարարացն գրգռէր զկժագաւորն Տիրան: Այս ինքն որ ունէր զպատիւն մեծի մարդպետութեանն, այր ներքինի, չարասիրտ, չարախորհուրդ, չարագործ, որում Հայր կոչէին: Զբազումս ի նախարարացն ետ քսութեամբ առանց վնասու կոտորել և խանգարեաց զմեծ տէրութիւն թագաւորութեանն: Մանաւանդ աւելի զերկու տոհմսն զաւագս տայր իւրով չարախօսութեամբն հանել ընդ սուր, և անունդ (անզաւակ) առնել միահաղոյն, զտոհմսն Ռշտունեաց և զտոհմն Արծրունեաց. բառնային ի միջոյ առանց ամենայն վնասու և յանցման, մինչ անգամ և զէգսն կոտորեցին ազգացն: Ցայնմ ժամանակի ի գայթակղի՝ գտանէին է դայեակս մանկունս փախըստեայս, զՏաճատ որդի Մեհնդակայ Ռշտունւոյ, և միւս ևս Շաւասպ որդի Վաչէի Արծրունւոյ, զորս ածին առաջի թագաւորին: Իբրև տեսանէր՝ տայր հրաման հանել փողոտել զմանկունսն, զի նոքա ևեթ ճետք մնացեալք էին յազգացն: Եւ անդ դիպեալ Արտաւազդ և Վասակ, արք ի Մամիկոնեան տոհմէն, որք յարուցեալք անկան ի վերայ մանկանցն տղայոց, մէն մի յանթի հարեալք ի դուրս գնացին. զէն ի վեր առեալք կռուոյ պատրաստէին ի վերայ այնց մանկանց մեռանել: Զի թէպէտև սնուցանէին նոքա զորդին զարքային զԱրշակ՝ սակայն զչարեալք ընդ գործ ժամանակին՝ թողին զանձն իւրեանց զԱրշակ և գնացին ի բաց ի բանակէն արքունի: Եւ չոքան յաշխարհն իւրեանց յամուրս Տայոց, և անդ նստան ամս բազումս ընտանեօք իւրեանց, և թողին զայլ զտուն (կալուածս) իւրեանց: Եւ սնուցանէին զայն մանկունսն, զՇաւասպն և զՏաճատ, և ետուն նոցա զդստերս իւրեանց ի կնութեան, ուստի դարձեալ միւսանգամ ազգն այն սերեցան, և ոչ խառնէին նոքա ի խորհուրդս Հայոց մինչև ի բազում ամս» (Բուզ. Գ. ԺԲ.): Թէ այսպէս թողուլ գնալն նախարարաց, մանաւանդ Մամիկոնեանց, ինչ մեծ աղետից պատճառ եղաւ Տիրանայ՝ պիտի տեսնենք յետոյ:

**23.** Մինչև ցարդ խօսեցանք Տիրանայ ներքին գործոց վրայ: Գանք այժմ արտաքին քաղաքականութեան նորա: «Բարեկամու-

*թիւն էր, ասէ Բուզանդ, ի մէջ թագաւորին Հայոց և Պարսից»։ Այս արդարև կարի հաւանական է, նայելով արտաքին պատմութեան այնր ժամանակի։ Տիրան կը թագաւորէր այնպիսի ժամանակ (343—353), երբ կուսակալք Հռոմայեցւոց յարևելս յանպիտանութիւնս հատեալ՝ երկիրը կեղեքելու և զիրար կործանելու միայն ունէին ուշ (Ամմ.), մինչ Շապուհ, թէպէտև զբաղեալ պատերազմներով, ինչպէս յիշեցինք, արևելեան բարբարոսներու դէմ՝ չէր դադրած գիտելէ Հռոմայեցւոց շարժումներն ի ձեռն զօրավարաց իւրոց. գրեթէ անդադար մարտ էր ի մէջ երկու ոսոխ տէրութեանց։ Պաշարումն Մծբնայ կրկնեցաւ և երեքկնեցաւ, այն է 347-ին և 350-ին։ Քաղաքն ազատեցաւ անտարակոյս տեղւոյն ամրութեան և բնակչաց քաջութեան պատճառաւ, թէպէտ Գաթըրճեան կը համարի եղած «քաջալերութեամբ և աղօթիւք սրբոյ եպիսկոպոսին իւրեանց Յակոբու», և կը կարծէ ևս, առնլով Թէոդորետոսէ եկեղեցական պատմչէ Դ. դարու՝ թէ «Շապուհ զարհուրեալ ազգի ազգի տեսլենէ՝ մեկնեցաւ յետս»։ Իրաց այս վիճակին մէջ չէ անհաւանական, թէ Շապուհ ընտրեց շահել զՏիրան, ցուցնելով նմա բարեկամութիւն, մինչև ըստ աւանդութեան իւրք, ազատել զնա հիւսիսական ազգաց յարձակմանէն (Խոր. Գ. ժԲ.)։ Տիրան ևս տեսնելով Հռոմայեցւոց ապիկարութիւնը՝ հաւանական է թէ լաւ համարեցաւ մօտենալ ի Պարսիկս։ Վարազ Շապուհ անուն ոմն կը նստէր յայնժամ յԱտրպատականի իբրև սահմանապահ Շապհոյ կողմանէ—թերևս էր սա Դենշապուհն Ամմիանոսի,— և ինչպէս կ'երևի՝ պատգամագնացութիւնք ի ձեռն սորա լինէին ընդ Տիրան և ընդ Շապուհ։ Յայս բարեկամութիւն Շապհոյ թերևս յուսացեալ Տիրանայ՝ նշկահեց նախարարաց, սակայն խաբուեցաւ նենգաւոր Պարսկէն, որ պատճառանս կը խնդրէր նուաճել զՀայս. և այս եղաւ դոյզն ինչ պատճառաւ, «վասն կաշոյ միոյ», որպէս ասէ Բուզանդ, ոչ առանց քսուեթեան թշնամեաց Տիրանայ։ Տիրան կը ղրկէ դեսպանութեամբ առ այն Վարազ զիւր սենեկապետն զՓիսակ Սիւնի. և որովհետև Տիրան ունէր ձի մի աննման և՛ գունով, և՛ հասակաւ, և՛ արութեամբ՝ Փիսակ առաւել հաճոյ երևելու համար Վարազայ՝ կը խրատէ զնա խնդրել զձին ի Տիրանայ հանդերձ թղթով, ուր ի մէջ այլոց կար յիշատակութիւն ձիոյն, զոր կը խնդրէր Վարազ ընծայ։ Տիրան որ չկամէր հանել յիւրմէ զձին՝ ուրիշ ձի գտնելով նմին նման գունով այլ ոչ մեծութեամբ՝ կը ղրկէ առ Վարազ ի ձեռն Փիսակայ։ Փիսակ ոչ միայն կը հանէ ի վեր գաղտնութիւնը, այլ և կը յաւելու ամբաստանութիւն զՏիրանայ, որպէս թէ Տիրան ունէր ի մտի օգնութեամբ կայսեր հանել*

Պարսից թագաւորութիւնն ի Սասանեանց և դարձուցանել այսրէն յիւր ցեղն Պահլաւեան։ Այս ամբաստանութիւն կ'երթայ յականջս Շապհոյ, որ համարելով զՏիրան մէտ ի Հռոմայեցիս՝ կը հրամայէ Վարազայ դաւով բռնել զՏիրան։ Վարազ ծածկելով իւր ոխը վասն ձիոյն՝ կը պատճառի անձուկ սիրոյ՝ անձամբ տեսանելոյ զՏիրան, որ կ'ընդունի առաջարկութիւնը։ Ի պատիւ Վարազայ Տիրան կուտայ պատրաստել որսոյ տեղիս զբօսանս հիւրոյն, բայց զգուշանալով տալ առիթ նախանձու նենգաւոր Պարսկին, և խորհելով իւր սպասաւորներուն հետ՝ կ'ընտրէ երկրորդական տեղ որսոյ յերկրին Ապահունեաց ի հիւսիսոյ Բզնունեաց ծովուն։ Եւ որովհետև, որպէս ասէ Բուզանդ, առ Տիրանայ չկային բաւական զօրք, և նախարարք հեռացած էին արդէն՝ Վարազ որ երեք հազարաւ եկած էր՝ ժամ պատեհ համարեցաւ տալ ձերբակալել զանօգնականն Տիրան ի հացի, և կուրացուցանելով զնա տարաւ ընտանեօք առ Շապուհ (353)։ Առնլով այս ձախողութեան գոյժն՝ արթնցան նախարարք և եղան հետամուտ Վարազայ, բայց անագան։ Թէ ինչ եղաւ յետոյ՝ պիտի տեսնենք զկնի։ Սակայն հետաքրքրական է լսել վերոյիշեալ պատմութիւնը բուն իսկ ի Բուզանդայ.—«Մինչ դեռևս յոյժ խաղաղութիւն էր ի մէջ թագաւորայն երկոցունց՝ տնկաւ ի Տեառնէ խռովութիւն ոչինչ բանիւք, արամբ միով անարգաւ, որ ոչինչ պակաս քան զդև էր մոլութեամբ, որոյ անուն Փիսակ կոչէր, որ սենեկապետն էր արքային Տիրանայ, ազգաւ Սիւնի։ Սա դեսպանագնացեալ էր առ Վարազ Շապուհ, զոր թողեալն էր սահմանապահ արքային Պարսից յԱտրպատական աշխարհին։ Զայնու ժամանակաւ ձի մի էր երիվար արքային Տիրանայ, զորմէ կարի զարմանալին։ Եւ էր ձին գունով ճարտուկ ճանճկէն. սա լի էր քաջութեամբ, անուանի և հոյակապ, մեծ և բարձր, երկայն քան զամենայն ձիս, և տեսանելով քան զայլս գեղեցիկ, զանազան՝ որ համեմատ նմա այլ ոչ գտանէր։ Զորմէ յերթալն իւրում ի դեսպանութիւն սենեկապետն արքային Փիսակ մատնեաց զձին Վարազայ, վասն զի բարեկամացեալ էր ընդ նմա, և ի նմանէն ինքն թուղթ առեալ, բերեալ մատուցանէր արքային Հայոց, որ չհաւանեալ՝ տալ ոչ առնոյր յանձն։ Այլ վասն զի կասկածէր յառնէն, զի գուցէ խռովութիւն ինչ ի մէջ թագաւորացն երկոցունց արասցէ՝ ի խնդիր անկանէր գտանել զնոյն գոյն ձի, զնոյն նշան, զնոյն պատկեր, բաց ի մեծութենէ, զի՛ այնչափ մեծ ուրեք ոչ գտանէր։ Արդ՝ զնոյն նման, զնոյն կերպարանս ճարտուկ ճանճկէն գտեալ՝ հանդերձ հրավարտակօք և պատարագօք ի ձեռն մոլեկան Փիսակայն առ իշխանն յԱտրպատական առ Վարազն արձակէր. և միտս դնելով խոր-

հուրդ տայր. Ասասցես, ասէ, եթէ այս ինքն է զոր խնդրեցերն, զի առ սէր քո ոչ խնայեաց ի քէն։ Իսկ նա հասեալ առ Վարազն՝ յայտ առնէր զիրս խնայութեանն ասելով, եթէ Այնչափ ի հեռ և ի նախանձ, ի չարակնութեան և ի թշնամութեան, յատելութեան և ի չկամութեան, յերկմտութեան և յաներկիւղութեան է առ թագաւորն և առ ամենայն զօրսն Պարսից արքայն Հայոց Տիրան՝ մինչ անգամ վասն կաշոյ միոյ խնայ արարեալ՝ թագոյց, և զքեզ ծաղր արարեալ, առ զմիտս քո գողանալ՝ զայս այլ ընդ այլոյ յիմ ձեռն առ քեզ առաքեաց։ Եւ ոչ այդ միայն է, ասէ, այլ ի կայսր և ի զօրս նորա յուսացեալ խորհի հանել զթագաւորութիւնն Պարսից յազգէն Սասանայ, զի ասէ, թէ մեր լեալ է և հարցն մերոց այն տէրութիւնն։ Արդ ասէ, թէ չեմ ծուլալոց մինչև դարձցի պատիւ հարցն նախնեաց, և զնախնի թագաւորութիւնն այսրէն առ որդի և առ զաւակ նոցա յազգս իմ և ի տունս իմ և յանձն դարձուցանեմ։ Եւ այսչափ և այսպիսի բանիւք գրգռէր զնա Փիսակն անօրէն ի վերայ տեառն իւրոյ բնակի, և նիւթէր զմահ ի վերայ իւրոյ թագաւորին։ Ապա իբրև զայս ամենայն լուաւ Վարազ Շապուհ Ատրպատական մարզպանն ի կատաղախօս, ի չնաբերանն Փիսակայ՝ վաղվաղակի նամակ ամբաստանութեան գրեալ Վարազայ զարքայէն Հայոց՝ մատուցանէր արքայիցն Պարսից։ Եւ այնչափ զայրացոյց գրգռեաց յուզեաց դրդեաց սրտմտեցոյց բարկացոյց զթագաւորն Պարսից ի վերայ արքայիցն Հայոց՝ զի ապա առ հրաման ի նմանէ, զի եթէ է հնար, գտանել մարթասցէ ճանապարհս՝ մեքենայիւք զայթակղութիւնս դնել, որսալ ըմբռնել զարքայն Հայոց։ Ապա արձակէր Վարազ դեսպան առ արքայն Հայոց դաւով խօսել ընդ նմա, զանձուկ սիրոյ պատճառեալ՝ համարձակութիւն խնդրէր գալ նմա առ նա։ Իսկ իբրև լուաւ զայն Տիրան արքայն Հայոց՝ փութապէս վաղվաղակի մեծաւ ուրախութեամբ առ ինքն կոչել հրամայէր։ Եւ մինչչև նա եկեալ էր, խորհէր արքայն ընդ իւր ծառայսն ներքինիսն սպասաւորսն իւրոյ սենեկին, ասէ. Արժան է մեզ զայր որ գայ առ մեզ՝ զբօսուցանել և ուրախ առնել որսովք և բազմականօք և ամենայն պէսպէս վայելչութեամբք։ Այլ ոչ այնչափ ինչ արժան է զմեծ ինչ որսոյ տեղիս ի մերում երկրի աստ նմա տեսանել, վասն չարակնութեան յաչաղանաց չարաբարութեան նենգութեանն ազգին Պարսկաց. Նմա ցուցէք տեղիս դոյզնագիւտ որսոց ինչ, որով լոկ զբօսուսցուք զնա և մի ցուցցուք զառատ ինչ որսոց տեղիս, և մի մեծ ինչ նախճիրս որսոց կոտորեսցուք առ ի ցոյցս առնելոյ, այլ վարկպարազի արասցուք վասն չարութեան դառ-

նացող ազգին․ յերկրին Ապահունեաց, յոտին մեծի լերինն Մասեաց զայն տեղին ցուցցուք որում անուն կոչի Աղիորսք։

Ապա եկն եհաս Տապուհ Վարազն երիւք հազարօքն և յանգիման եղև թագաւորին յերկրին Ապահունեաց և մեծապէս մեծարեցաւ ի նմանէ։ Եւ այն բանքն որ վասն որոյն ի թագաւորէն ասացան՝ վաղվաղակի յունկն զօրավարին Պարսից հասանէին ի բերանոյ շորիկն շոգմոգն տիրանենգն և տիրադրուժն, տիրասպանուն, տիրամատնիչն Փիսակայ, յաշխարհակործանս յառնէ անտի։ Աւուրս սակաւս ուրախ լինէին ի միասին. այլ իշխանն Պարսից զթշնամութիւնն զոր ունէր ի ներքոյ՝ խորամանգեալ ծածկեալ մեքենայեալ ռուագաստեալ բերէր, և առնէր սպաս զդաւն կատարել։ Եւ ի ժամանակին յայնմիկ այնպէս դիպեցաւ, զի զօրավարքն (Մամիկոնեանք) չէին անդ, այլ սարտուցեալ էին, և այլ մեծամեծք նախարարացն և աւագ տանուտէրք ազատանին, սոյնպէս և զօրքն յիւրաքանչիւր կայեանս, յիւրաքանչիւր դադարս դադարեալ էին, և ոչ ոք էր որ մնացեալ էր առ թագաւորին, և ոչ գունդ և այրեձի, բայց միայն սակաւ սպասաւորք հանդերձ որսոցն պառականօք և առհվիրայ մարդկաւն և խառնաղանճ խորանապահ զօրուն և ռամիկսպաս զօրօքն, և տիկնաւն հանդերձ արքայորդին մանուկն Արշակ։ Այսպէս սակաւուք դիպեալ ի ժամանակին յայնմիկ, թէպէտև ետես հարուստ գնդաւ եկեալ զզօրավարն Պարսից—զի էին ընդ նմա սպառազէն վառեալք արք իբրև երեք հազարք—ոչինչ խիթացեալ զգուշաւ՝ անկասկած լինէր, քանզի տեսանէր զնա իբրև ի պատճառս խաղաղութեան եկեալ, մեծաւ պատարագօք և պատուական ընծայիւք և մեծաշուք մեծարանօք։ Եւ իբրև ոչինչ բազում աւուրք ընդ մէջ եղեն՝ յընթրիս կոչնոց ի հաց հրաւիրեալ կոչէր Վարազ զարքայն ի պատիւ մեծարանաց։ Ապա իբրև ընդ գինիս մտին և քաջ արբեալ լինէին թագաւորն և որ ընդ նմայն էին՝ զօրն դարանակալ յանպատրաստից յանկարծօրէն յայլակարծուց զնոսա յանկարծուստ յիւրաքանչիւր բազմականի ի վերայ հասեալք ըմբռնէին, և վահանափակ շերտաւորացն պատէին զթագաւորն Տիրան, և կալեալ կապէին զոտս և զձեռս նորա ի կապս երկաթիս, և զբանակն և զոր ինչ գտանէին՝ աւար հարկանէին, և զգանձս և զստացուածս, զկին և զորդիս թագաւորին զորս գտին ի բանակին՝ խաղացուցին յերկրէն Ապահունեաց։ Իբրև եկին հասին ի գիւղ մի որում անուն Դալարիս կոչէին, և յորժամ եկն եմուտ զօրավարն Պարսից ի ներքս ի գիւղն՝ ածէր կապեալ զարքայն Տիրան ընդ իւր։ Եւ ասէ Վարազ․ Աղէ, տեսէք ածուղ, որով երկաթ շիկացուսցուք, զի զաչս խարեսցուք զարքայիս Հայոց։ Եւ անդէն բե-

րին ածուղ, որով խարէին զաչսն Տիրանայ։ Ապա ինքն խօսել սկը-
սաւ Տիրան և ասէ. Փոխանակ զի իմ երկու աչքս լուսաւորքս խա-
ւարեցան յայս տեղւոջս՝ արդ փոխանակ Դալարեացս անուան Ածուղ
անուն լիցի սմա մինչև ցյաւիտեանս ժամանակաց, և այս երևոյթ
նշանակս մնասցէ յիմ յիշատակի։ Այլ ինձ յուշ եղև և գիտեմ, զի
խնդրեցաւ յինէն վրէժ չարեաց մեղացն իմոց, փոխանակ զի խա-
ւարեցուցի ես զաշխարհս որում թագաւորեալ էի՝ յերկուց լուսա-
ւոր վարդապետացն, և կարծեցի շիջուցանել զլոյսն ճշմարտութեան
քարոզութեան երկուց հաւատարմացն, վասն այսորիկ խաւարեցաւ
լոյս տեսանելեաց աչացս իմոց։ Եւ յայնմ ժամանակի վաղվաղակի
փութանակի չու առնէր յԱծուղ գեղջէն, խաղայր գնայր ճեպով
իշխանն արքային Պարսից հանդերձ Տիրանաւ արքայիւ և ամենայն
գերութեամբն յերկիրն Պարսից, և երթայր յԱսորեստան առ տէրն
իւր յարքայն Պարսից։ Իբրև լու եղև այս ամենայն կործանումն
զուժի չարեացն յանկարծօրէն թշուառութեանն հասելոյ՝ ժողով
լինէր նախարարացն և իշխանացն, ընդ որս էին գործակալք և զօ-
րագլուխք, պետք և ամենայն աշխարհաժողովք բազմութեանն
եկելոց կուտելոց։ Թէպէտև ժողովեցան կազմեցան գունդ եղեն,
պատրաստութեամբ զհետ կրթէին Վարազայ՝ ոչինչ կարացին հա-
սանել։ Սակայն հասանէին առնուին զկողմ մի ի Պարսից աշխար-
հէն, առհասարակ մարդակոտոր առնէին և զաշխարհն յայրեաց և
յաւեր դարձուցանէին։ Եւ ինքեանք դառնային և ի մի վայր ժո-
ղովէին, կոծ եդեալ աշխարանօք լային զիւրեանց բնակ տէրն զար-
քայն Հայոց, այնպէս և զկորուստ աշխարհին, և զանձանց անտէրըն-
չութիւն կործանման վարանացն աղխողորմ կոծէին» (Բուզ. Գ. Ի.)։

Տիրան, ինչպէս տեսանք, առանց յայտնի ընդդիմանալու Հռո-
մայեցւոց—և չէր իսկ կարող առնել զայս—յարած էր ի Շապուհ,
որ կը փայփայէր զնա առ ժամն՝ բանելու համար զնա յետս Հռո-
մայեցիներէն, մինչ ինքն զհետ էր գրաւել զՄիջագետս։

**24.** Երբ անկաւ Տիրան ի խաբս և երկիրը մնաց անտէր՝
նախարարք, ըստ Բուզանդայ, ի խորհուրդ մտանելով որոշեցին դի-
մել առ կայսր, և ղրկուեցան այս պաշտօնիւ Անդովկ Սիւնի և Ար-
շաւիր Կամսարական.—«Ապա ժողովեցան ի մի ժողով միաբանու-
թեան մարդիկ աշխարհին Հայաստան երկրին, նախարարք մեծա-
մեծք, աւագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զօրագլուխք,
դատաւորք, պետք, իշխանք, այլև ի շինականաց անգամ ռամիկ
մարդկանն։ Խօսել սկսան այր ընդ ընկերի և ասեն. Զինչ է այս,
զի ի սուգ մտեալ եմք. թշնամիք այսու գամագիւտ լինին. այլ
քան սակաւ ժամանակք են, այսրէն արշաւեսցեն թշնամիքն։ Այլ

**եկայք զանձինս անձամբ մխիթարեսցուք, անձանց և աշխարհի պա՜հ կալցուք և զտեառն բնակի վրէժ խնդրեսցուք»։**

---

## Գ. ՄԻՋԱՄՏՈՒԹԻՒՆ ՀՌՈՄԱՅԵՑԻՈՑ։

### ՅԱՐՇԱԿԱՅ ՄԻՆՉԵՒ ՊԱՊ։

*1. Կոստանդ։ 2. Արշակ կը թագաւորէ։ 3. Պաշտօնէութիւնք. նախարարք։ 4. Կաթողիկոսութիւնն։ 5. Ներսէս մեծ։ 6. Կարգք հաստատեալք ի նմանէ։ 7. Արտաքին քաղաքականութիւն Արշակայ։ 8. Արշակ կը հրաւիրուի ի Շապհոյ. Աներկիւղութիւն Վասակայ սպարապետի։ 9. Արշակ կ'երդնու. կը դրժէ երդմանն. Հալածումն ընդդէմ քրիստոնէից ի Պարսս։ 10. Ներքին գործք Արշակայ. շինութիւն Արշակաւանի։ 11. Փառանձեմ. Գնէլ եւ սպանումն նորա։ 12. Տիրիթ կը խնդրէ զՓառանձեմ յԱրշակայ եւ կ'սպանուի։ 13. Արշակ կ'առնու կին զՓառանձեմ։ 14. Անլուր դաւաճանութիւն Փառանձեմայ ընդդէմ Ողոմպիայ։ 15. Ներսէս կը մեկնի յԱրշակայ. Զոնակ ոմն կաթողիկոս հակառակ Ներսէսի։ 16. Սպանմունք նախարարաց։ 17. Չար խրատտուք Արշակայ։ 18. Վարդան Մամիկոնեան կ'սպանուի յեղբօրէն։ 19. Փորձ հաշտութեան ի մէջ Հռոմայեցւոց եւ Պարսից չաջողիր։ 20. Պատերազմն կ'սկսի։ 21. Արշակ օգնական Պարսից ընդդէմ Հռոմայեցւոց։ 22. Արշակ կը հեռանայ ի սպառ ի Շապհոյ հնարիւք նախարարաց։ 23. Ամիդ կ'առնուի. Արշակ կը միտէ ի Յոյնս։ 24. Կոստանդ կը մեռնի. Յուլիանոս կայսր. Զթղթոյ նորա առ Արշակ։ 25. Յաղթութիւն Յուլիանու. Մահ նորա։ 26. Յովիանոս եւ դաշինք նորա։ 27. Պայման Յովիանեան դաշանց զՀայոց։ 28. Ամմիանոս զԱրշակայ։ 29. Հայք յետ դաշանցն Յովիանու. Պատգամաւորութիւն առ Վաղէս. զաքսորէն Ներսիսի։ 30. Խրատ եւ նշանագործութիւնք նորա ըստ Բուզանդայ։ 31. Թշնամութիւնք Շապհոյ. Հնգամեայ վիճակ Հայաստանի։ 32. Մերուժան Արծրունի. Յարձակմունք Պարսից թելադրութեամբ նորա։ 33. Ասպատակութիւնք Պարսից։ 34. Երկպառակութիւն նախարարաց։ 35. Միւս եւս ընտանի թշնամի—Վահան Մամիկոնեան։ 36. Վատ խորհուրդ նախարարաց. Ներսիսի խրատն։ 37. Արշակ կ'ստիպուի երթալ առ Շապուհ։ 38. Մնապաշտ փորձ Շապհոյ ըստ Բուզանդայ։ 39. Արշակ կը դրուի յԱնյուշ բերդն. Վասակ սպարապետ կ'սպանուի։ 40. Աւեր աշխարհին Հայոց։ 41. Հայք կը դիմեն առ Յոյնս. Փառանձեմ կը պաշարուի յԱրտագերս։ 42. Արտագերից բերդը կ'առնուի Փառանձեմ կ'սպանուի թշնամանօք։ 43. Աւերաքանութիւնք ի պատմութեան Բուզանդայ։ 44. Հայք կը բռնադատուին յուրացութիւն. Նահատակութիւնք. Վկայական մահ Համազասպուհեայ։*

1. «Յայնմ ժամանակի առաքեցին ի մեծ նախարարաց անտի Հայոց հանդերձ պատարագօք առ Թագաւորն Յունաց, զի ի նա ձեռս տուեալ ծառայեսցեն նմա հնազանդութեամբ, և լինիցի նա նոցա թիկունք օգնականութեան՝ խնդրել վրէժս ի թշնամեաց նոցա։ Ապա առաքեցին զԱնդովկ նահապետ Սիւնեաց և զԱրշաւիրն Կամսարական նահապետն Արշարունեաց» (Բուզ. Գ. ԻԱ.)։ Այս կարի համաձայն է պարագայից ժամանակին։ Գրեթէ նոյն տարին (353) էր, որ Կոստանդ յետ նուաճելոյ զարևմուտս և միացունելոյ զկայսրութիւնն ընդ իւրով ձեռամբ՝ կը դառնար յարևելս ի գործ պատերազմին Պարսից, ուստի և պատեհ ժամանակ էր Հայոց դիմել յօգնութիւն Հռոմայեցւոց։ Համաձայն է նաև Յուլիանոսի ճառին, զոր վերագոյնն յիշեցաք և զոր խօսեցաւ Յուլիանոս ի դարձին Կոստանդեայ յաղթութեամբ յարևմտից, և կը խօսի, ինչպէս տեսանք՝ զՀայոց, որ ցրուացած էին ժամանակ մի և ապա դարձան առ Հռոմայեցիս։ Կայսրն, ասէ Բուզանդ, լսեց աղաչանաց Հայոց.—«Որք (Անդովկ և Արշաւիր) երթեալ հասեալ էին յաշխարհն Յունաց՝... տային զհրովարտակն և մատուցանէին զաշխարհապաղատ պատգամսն առաջի թագաւորին։ Իբրև լուաւ կայսրն զիրսն զայնոսիկ՝ մեծաւ փութով և բազում պատրաստութեամբ ի խնդիր ելանէր իրին հասելոյ և օգնական և թիկունք լինէր աշխարհին Հայոց» (Անդ)։ Հոս կը յիշէ Բուզանդ դաշինս իմն իբրև ի վաղուց եղեալ ի մէջ Կոստանդիանոսի և Տրդատայ. «Մանաւանդ զի, ասէ, զուխտն յիշէր զդաշանցն կռելոց զերդմանցն հաստատութեան, որ միջնորդութեամբ ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր»։ Թուղթն Վրթանայ ևս առ Կոստանդ, ըստ Խորենացւոյն, կը դնէ դաշն Կոստանդիանոսի ընդ Տրդատայ. «Յուշ լիցի քեզ պայման ուխտի հօրն քո Կոստանդիանոսի որ առ մերում թագաւորին Տրդատայ» (Խոր. Գ. Ե.)։ Բուզանդ այլուր, այն է յետ թագաւորելոյն Արշակայ, ինչպէս պիտի պատմենք ի ստորև՝ կը յիշէ դաշինս ինչ եղած ի մէջ Հայոց և Հռոմայեցւոց, առանց տալոյ զանուն այս կամ այն թագաւորի կամ կայսեր.—«Ապա վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն որ էր աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց՝ դէպ եղև առաքել զմեծն Ներսէս և ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն, զի երթիցեն, ի մէջ կայսերն և ի մէջ իւրեանց զուխտն հաւանութեան և խաղաղութեան նորոգեսցեն» (Բուզ. Դ. Ե.)։ Իսկ Եղիշէ եպիսկոպոսներէն և նախարարներէն առ Թէոդոս գրուած թղթին մէջ (որ կը թուի նմանութիւն վերոյիշեալ թղթոյն Վրթանայ, թէպէտ այն թուղթ ևս, նայելով պարագայից ժամանակին՝ է կասկածելի, ինչպէս պիտի

տեսնենք յետոյ)՝ յառաջագոյն քան զՏրդատ եղած կը թուի հաստատել այնպիսի սէր ի մէջ Հայոց և Հռոմայեցւոց, քանզի Տրդատայ անդէն իսկ ի մանկութեանն կու տայ յիշել զայն սէր (իմա դաշն կամ ուխտ)․ «Վասնորոյ և նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր՝ ի տղայութեան փախուցեալ սնաւ յերկրիդ Յունաց» (Եղիշ․ տպ․ Վենետ․ 1828, էջ 123)․ և ի ստորև ասէ, որպէս թէ շատ մատեաններ մէջ բերուեցան, և գտնուեցաւ այն դաշնադրութիւնն․ «Բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան, որ զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս գտանէին»։ Քաղաքական ինչ կապ Հայոց ընդ Հռոմայեցւոց կար արդարև ի վաղուց, անդստին ի մեծէն Տիգրանայ, մանաւանդ յետ որոյ Հայաստան եղաւ «դաստակերտ» (աւատ), նա՝ հարկատու իսկ այս վերջնոց։ Ապաքէն զայն հին դաշնակցութիւն կ'իմանայ Եւսեբիոս, որ առ Մաքսիմինոսիւ իսկ, որ է յառաջ քան զԿոստանդիանոս՝ գիտէ զՀայս «ի սկզբանէ» (ἐξ ἀρχαίου) բարեկամ և նիզակակիցս հռոմէական ժողովրդեան, և Յուլիանոս կը կոչէ զՀայս «հին մարտակիցս» (παλαιοὶ σύμμαχοι) Հռոմայեցւոց։ Այս դաշնակցութիւն կար միշտ՝ ցորչափ Հայք էին ընդ վերին իշխանութեամբ Հռոմայեցւոց, և հաւանականապէս կը նորոգուէր ամէն անգամ որ Հայք կը մտնէին ընդ իշխանութեամբ նոցա, միով բանիւ՝ էր բնական պայման երկու ազգաց յարաբերութեան, միոյն իբրև պարգևատուի և տեառն (suzeraine), և միւսոյն իբրև պարգևառուի և հնազանդելոյ (vassal)։ Այսպիսի դաշնակցութիւն կը դնէր անտարակոյս երկուստեք ընդ պարտականութեամբ զՀռոմայեցիս և զՀայս, մանաւանդ առաջիններն՝ փութալ յօգնութիւն ի ստիպել հարկին։ Չէ սակայն անհաւանական, թէ յետ քրիստոնէութեան ի մէջ Տրդատայ և Կոստանդիանոսի հաստատուեցաւ մասնաւոր դաշն, կամ բանիւ Եղիշէի՝ սէր, զոր քրիստոնեայ մատենագիրք մեր համարելով նուիրական և բուն դաշն՝ կը յիշեն միշտ ուխտ անուամբ, և ազգն յիշեցունելով ի հարկի քրիստոնեայ կայսերաց՝ կ'ստիպէ իմն զնոսա յօգնութիւն։

«Ապա -- ասէ Բուզանդ, յառաջ տանելով զպատմութիւնն— գրէր հրովարտակ թագաւորն Յունաց առ արքայն Պարսից... Դարձուցես, ասէ, զգերութիւնն առեալ յերկրէն Հայոց և զթագաւորն Տիրան ինքնին գլխովին և զամենայն ինչ զոր առեալ իցէ անտի։... Եւ արքայն Պարսից վաղվաղակի զիրսն կատարէր, հանէր զկապեալն Տիրան ի տանէն բանտի կապանաց, խօսէր ընդ նմա ողոքով, զի թագաւորեցուսցէ զնա անդրէն, յիւր աշխարհն արձակելով, զի երթիցէ նա պատուով։ Ապա տուեալ պատասխանի Տիրանայ, եթէ անօգուտ է ինձ և անպատշաճ է կուրութեամբ, անմարթ իսկ է կարի, ունել

զթագաւորութիւն. բայց փոխանակ իմ թագաւորեցո զԱրշակ զորդի իմ։ Յայնժամ թագաւորեցուցանէր (Շապուհ) զԱրշակ որդի նորա ի վերայ աշխարհին Հայոց. և զկանայս թագաւորին և զայլ գերիս ամենայն, գանձիւք, ընծայիւք և սաացուածովք հանդերձ, և միանգամայն դարձ առնէր ամենայն գերութեանն։ Եւ զինքն Տիրան՝ թագաւորն Պարսից հանդերձեաց կազմեաց մեծաւ կազմուլթեամբ և արձակեաց յիւր աշխարհէն յերկիրն Հայոց, և կատարեալ հաւատարմացոյց զասացեալսն հրամանաց թագաւորին Յունաց։ Եւ իբրև զնոսա ի Հայս ուղարկէր՝ ապա և զ'ի թագաւորէն Յունաց զառ ինքն եկեալսն դեսպանս արձակէր յիւրմէ, զի երթիցեն պատմեսցեն թագաւորին Յունաց, թէ որպէս և կամ զիարդ նա զհրամանսն կատարեաց զթագաւորին Յունաց» (Անդ)։ Բուզանդ զթագաւորեցուցանելն Շապհոյ զԱրշակ այնպէս դիւրաւ՝ կը պատմէ եղած իբրև պայման պատերազմէ մը ետքը որ եղաւ ի մէջ Պարսից և Հայոց՝ որոց օգնական էին Յոյնք։ Ըստ Բուզանդայ, այն ինչ պատգամաւորք Հայոց մեկնեալ էին երթալ առ կայսր՝ Ներսեհ արքայ Պարսից (իմա որդի կամ զօրավար Շապհոյ) կը մտնէ մեծ պատրաստութեամբ ի Հայս, բազումք ի նախարարաց առեալ զընտանիս իւրեանց խոյս կու տան ի Յայնս՝ տալ գոյժ կայսեր, որ խակոյն կը գումարէ ի Հայս բաւական զօրս, որք միանալով ընդ Հայոց կու տան ճակատ Պարսից զօրուն հետ։ Ըստ Բուզանդայ՝ կայսրն անձամբ կու գայ ի Հայս, և ծպտեալ իբրև ոմն ի շինականաց՝ ի կերպարանս կաղամբավաճառի կ'երթայ դիտել Պարսից զօրութիւնը, որ անհոգութեամբ բանակած էին Օսխայ անուանեալ տեղն ի Բասեն։ Յոյնք և Հայք միացեալ զօրութեամբ կը զարնեն չարաչար զՊարսիկս, որ կ'աճապարեն ի փախուստ։ Երկիրը կը յանձնուի Անդովկայ և Արշաւրի։ Շապուհ այս պարտութեան վրայ կը մտնէ ի դաշն ընդ կայսեր—արձակել զՏիրան հանդերձ իւրովքն, և փոխանակ այնր առնուլ յետս զիւր գերութիւնն, ընդ որս էին, ըստ Բուզանդայ, բոլոր կանանին հանդերձ տիկնաց տիկնաւն։ Շապուհ տեղեկանալով, թէ այս պատերազմն յառաջ եկաւ չնչին պատճառէ, այն է ձիոյ մը համար՝ կ'ընկենու զՎարազ Շապուհ Ատրպատականի մարզպանն ի պատուոյն և կ'սպանանէ զնա մորթազերծ մահուամբ ըստ Պարսից օրինի։ Լսենք նմին իսկ Բուզանդայ. «Մինչդեռ դեսպանքն երթեալք յերկրէն Հայոց ի կայսերական պաղատն չև էին անդրէն յիւրեանց աշխարհն դարձեալ՝ ի կողմանց արևելից խաղաց գնաց ինքն Ներսեհ արքայն Պարսից, գալ առնուլ այրել և աւերել, կորուսանել և միահաղոյն իսկ յիւր վտարել զսահմանս Հայաստան երկրին։ Եւ առեալ զզօրս իւր ընիւ

աղխիւ և ամենայն մեծաւ կարաւանաւ, փղակոյտն բազմութեամբ Հանդերձ, անթիւ վաճառօք և ամենայն կանանօքն և Հանդերձ տիկնանց տիկնաւն՝ եկն ի սահմանս Հայոց, խճողեաց ելից զեր-կիրն առ Հասարակ։ Յայնմ ժամանակի ազատազօրքն նախարարացն Հայոց առեալք զիւրաքանչիւր ընդանիս՝ լինէին փախստականք, ի կողմանս Յունաց անդանէին, գոյժ տային կայսերն բազմադունդ բանակին նախարարացն։ Ապա իբրև զայս ամենայն լսէր թագա-ւորն Յունաց՝ նոյն օրինակ և նա զիւր զօրսն գումարէր և չու արա-րեալ գայր Հասանէր յերկիրն Հայոց ընդդէմ թագաւորին Պարսից։ Եւ եթող զիւր զբանակն զՍատաղ քաղաքաւն, և ինքն ընտրեաց իւր արս երկուս գլխաւորս, արս իմաստունս Հայաստան բանակէն, այսինքն զԱրշաւիրն և զԱնդովկն, զի այս արք էին որ չոգան առ նա դեսպանութեամբ յառաջնում նուագին։ Եւ այսպէս Հանդերձ նոքօք ինքն իսկ կայսրն ի շինականութեան կերպարանս, ի կա-ղամբավաճառի օրինի, մտանէր ի բանակն Պարսից։ Իբրև նոքա բանակեալ էին ի գաւառին Բասենոյ, ի գիւղն որ անուանեալ կոչի Ոսխայ՝ եկին մտին սոքա ի բանակն արքային Պարսից, դիտեցին քննեցին զչափ առին զնոցա զօրութեան զօրացն։ Եւ անտի դար-ձեալ յիւրեանց բանակն՝ կազմեցան պատրաստեցան. գային Հասա-նէին, գտանէին զբանակն արքային Պարսից ի նմին տեղւոջ բա-նակեալ ի պղերգութեան յանհոգութեան յանկասկած խաղաղու-թեան։ Ապա Հասեալ ի տուընջէն ժամուն՝ անկանէին ի վերայ թա-գաւորին Պարսից, ընդ սուր զբազումս ի զօրացն Հանէին։ Եւ առին զկապուտ զաւար բանակին, և զկանայս թագաւորին և զբամբիշն, և զինչս և զստացուածս նոցին ընդ նմին ի գերու-թիւն վարէին, զկանայս նոցա և զգանձս և զկեանս և զկազմած նոցա։ Բայց միայն թագաւորն պրծեալ մազապուր, մի սուրհան-դակ առաջի՝ ելանէր փախստական. Հազիւ ուրեմն կարէր անկա-նել Հասանել յաշխարհ իւր։ Իսկ կայսրն մեծաւ շքեղութեամբ անուանի պերճացեալ ի մէջ բանակին երևէր։ Եւ ի վերայ երկրին թողեալ իշխանս վերակացուս՝ մեծապարգև մեծապատիւ մեծարէր, և յանձն արարեալ զնոսա ամենայն իշխանացն և զաշխարհն նոցա՝ ինքն չու արարեալ գնաց յերկիր իւր յերկիրն Յունաց։

Եւ արքայն Պարսից գնացեալ փախստական յերկիր իւր. իբրև եհաս անդր՝ ի խոյզ և ի խնդիր անկանէր։ Խորհուրդ ի մէջ առ-նոյր Հարց և քնին առնել. Հրամայէր զի տեսցեն և յայտ արաս-ցեն, թէ ուստի եղև սկիզբն պատերազմին։ Ապա ի վեր եկին և յայտնեցան իրքն առաջի նորա, զի յոչինչ իրաց և ի վատթար բա-նից, վասն ձիոյ միոյ եղև այն ամբոխ խռովութեան ի մոլեկան

առնէն Տապուհ Վարազայ։ Ապա հրաման ետ հանել զպատիւն ի բաց և մերկանալ ի նմանէ զպատուական պատմուճանն, և մեծացհարուածոց արժանի առնէր զՎարազն։ Ըստ պարսկի օրինակին հրամայէր զմորթն ի բաց հանել և խոտով լնուլ, և ի հրապարակի ՚ի բրում ի տեսիլ ծանականաց կանգնել հրամայէր։ Եւ ինքն ի զրըջումն եկեալ վասն իրացն եղելոց՝ արձակէր աղօթկերս՝ ի հաշտութիւն խաղաղութեան խօսել ընդ կայսերն, զի գոնեայ զկանայս իւր արձակեսցէ ի գերութենէն և բարձցէ ի նմանէ զծանակութեանցն զդարովութեանցն նախատինս։ Նախ դու, ասէ թագաւորն Յունաց, դարձուցես զգերութիւն առեալ յերկրէն Հայոց, և զթագաւորն ինքնին գլխովին. ապա յորժամ զայդ արասցես՝ և ես զիմս դարձուցից զոր առեալ եմ, զի եթէ նախ դու զնոցա զաւարն դարձուցես՝ և ես ապա գքոյդ դարձուցից։ Եւ իբրև լուաւ զայս արքայն Պարսից՝ վաղվաղակի զիրսն կատարէր..։ Եւ եղև իբրև լուաւ թագաւորն Յունաց, եթէ կատարեաց ի գլուխ եհան զայս ամենայն թագաւորն Պարսից, և դարձ արար գերութեանն Հայոց և Տիրանայ արքային՝ հաճեցաւ։ Յայնմ ժամանակի և թագաւորն Յունաց առնէր գերեդարձ գերութեան արքային Պարսից։ Եւ հանդերձեաց կազմեաց թագաւորն Յունաց զկանայս թագաւորին Պարսից մեծաւ պատուով, և զամենայն գերութիւնս նոցա ընդ նոսին յերկրէն Յունաց յերկիրն Պարսից դարձուցանէր, և բարեաւ առ թագաւորն յուղարկէր» (Բուզ. Գ. ԻԱ.)։

Թողլով այս պատմութենէ ինչ ինչ, զորօրինակ զանունն Ներսեհ փոխանակ Տապհոյ, զգնալն կայսեր անձամբ ի Հայս և լրտեսել զբանակն Պարսից երկու մարդով, զանկանելն գերի կանանուոյն Պարսից թագաւորին ի ձեռս Յունաց,—պարագայք, որ կը ցուցնեն, թէ Բուզանդ կը շփոթէ այս պատերազմն ընդ պատերազմին Ներսեհի առ Գաղերիոսիւ—բնական է, և արդիւնք իրացն իսկ կը պահանջեն ընդունել՝ թէ այնպիսի պատերազմն եղաւ արդարև, և թէ վտանգեցան Պարսք այն պատերազմին մէջ, մինչև ստիպել Տապհոյ հանել՝ միւսանգամ թագաւորեցուցանել զՏիրան, կամ, ի հրաժարել նորա վասն կուրութեանն՝ զորդին Արշակ ի վերայ Հայոց, մանաւանդ որ Տապհոյ համար շահ մեծ էր, Հռոմայեցւոց դէմ պատերազմաց համար որ առաջի կային՝ այն բարեբարութեամբ ունել զՀայս յիւր կողմն։ Այն ևս հաւանական է, թէ Կոստանդ ունէր ի նպաստ իւր մեծ պատերազմի մը մէջ յաղթող լինելոյ առաւելութիւնն։ Մեծ իմն պատճառ ընդունելոյ մեզ Բուզանդայ այս պատմութիւնն՝ է նախ լինելն նորա ժամանակակից։ Դժուարին էր Բուզանդայ, որ ըստ ամենայն հաւանականութեան կ՚ապ-

րէր առ Արշակաւ իբրև թեւլակալ Ներսէսի՝ պատմել պատերազմ մի այնպէս մանր մասամբք իբրև եղած առ կենդանութեամբ նորա՝ եթէ չունէր այն ամենևին տեղի։ Երկրորդ՝ առանց մեծ պատերազմի և յաղթութեան ի կողմանէ Հայոց և Յունաց՝ անմեկնելի կը մնայ Հայոց, որ ըստ վկայութեան ճառին Յուլիանու պառակտեալ ցրուեալ և անտերունչ մնացած էին՝ վերստին միանալ և նորոգել, դարձեալ, ըստ ճառին Յուլիանու, օգնութեամբ Յունաց։

Յ. Ըստ Բուզանդայ՝ թագաւորելն Արշակայ եղաւ հաճութեամբ երկուց թագաւորաց, Կոստանդայ և Շապհոյ, որ մեծ փառօք արձակեաց զԱրշակ յերկիր իւր հանդերձ հարբն և ամենայն ընտանեօք։ Վստահութիւնն հաստատուեցաւ, փախուցեալ նախարարք դարձան յետս, և Արշակ սկսաւ կարգել և յարդարել զերկիրն.—«Իբրև եղև հաճութիւն և բազում խաղաղութիւն ի մէջ թագաւորին Յունաց և արքային Պարսից՝ ապա և թագաւորն Պարսից Ներսեհ (իմա՝ Շապուհ) թագաւորեցոյց զԱրշակ որդի Տիրանայ, և արձակեաց մեծաւ փառօք։... Եւ եղև խաղաղութիւն մեծ ի ժամանակին յայնմիկ։ Ժողովեցան ամենայն թագուցեալքն, փախուցեալք և կորուսեալք երկրին Հայոց, և էին անկասկածք բնակեալ ի խաղաղութեան մեծի ընդ հովանեաւ արքային Արշակայ։ Կարգեցաւ կազմեցաւ յօրինեցաւ խաղաղացաւ աշխարհն Հայոց ի մէջ երկուց թագաւորացն, և յայնմհետէ բնակեալք խաղաղութեամբ՝ վայելէին յիւրաքանչիւր արարս իւրեանց» (Բուզ. Դ. Ա)։ Ո՞րչափ համաձայն է այս՝ ճառին Յուլիանու։

Առաջին գործ Արշակայ յետ թագաւորելոյն եղաւ ածել զիւրև զՄամիկոնեանս, զիւր դայեակսն, որ ինչպէս տեսանք՝ զզուելով ի գործոցն Տիրանայ՝ առանձնացած էին յիւրեանց ժառանգական երկիրն ի Սպեր, ի Տայս։ Վարդան, երէցն, հաստատուեցաւ ի նահապետութեան տոհմին, երկրորդն, Վասակ, ի սպարապետութեան, նոյնպէս կրտսերն ի զօրավարութիւն, և այլ ևս նախարարք իւրաքանչիւր յիւր գործ, և սահմանք երկրին ամրացան զօրօք որպէս յառաջն էր.—«Յայնմ ժամանակի ի խնդիր ելանէր Արշակ տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնէից, մանաւանդ զի իւր դայեակքն և սնուցիչք էին։ Երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընտանութիւնն, զի պառակտեալք և քակտեալք էին յընտանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խօլութեանն Տիրանայ։ Եւ կացոյց արքայն զՎարդան զերէց եղբայրն ի նահապետութեան ազգին իւրեանց, և զՎասակ միջին եղբայրն, զիւր դայեակն՝ ի սպարապետութիւնն զօրավարութեան յիրս պատերազմացն, սոյն-

պէս և զկրտսերն ի պետս զօրացն կացուցանէր։ Սոյնպէս և զամենայն ազգս մեծամեծաց նախարարացն, որպէս առաջին թագաւորքն՝ նուաճէր իւրաքանչիւր չափու, և զզօրսն բաժանեալ յամենայն կողմանս սահմանացն Հայոց սահմանապահս կացուցանէր» (Բուզ. Դ. Բ)։ «Եւ նորոգեցաւ զուարթացաւ, կը կրկնէ Բուզանդ, տէրութիւն թագաւորութեանն Հայաստան երկրին որպէս և զառաջինսն, մեծամեծքն յիւրաքանչիւր գահու, և գործակալքն յիւրաքանչիւր չափու» (Անդ)։

**3.** Բուզանդ նոյն Դ. դպրութեան Բ. գլխոյն վերջին մասին մէջ ունի մութ հատուած մի, որ կը թուի ցուցնել թագաւորին տաճարին (սեղանին) փառաւորութիւնը, միանգամայն զճոխութիւն տէրութեանն, և յետ յիշելոյ երկու գլխաւոր գործակալութիւն (պաշտօնէութիւն), այն է զհազարապետութիւնն և զսպարապետութիւն՝ ի սոցանէ «Ի խոնարհ, ասէ, ինն հարիւր բարձ մտանէր ի ժամ տաճարին ուրախութեան բազմականացն կարգելոց, թող զտնկայս գործակալութեանն սպասու»։ Բուզանդ կոչելով զհազարապետութիւնն «աշխարհատես խնամակալութիւն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութիւն»—(պարսկերէն *տիհգան* բառէն, որ կը նշանակէ գիւղապետ, Հյկ. Բռ.),—և զազգն Գնունեաց, որոց յանձն էր յայնժամ այս պաշտօն, կոչելով «շինականաշէն»՝ կը ցուցնէ թէ հազարապետն էր վերակացու մշակութեան և բերոց, յորոց է բոլոր հարստութիւն երկրին, և խնամակալ շինականաց, որպիսի էին տրիբունք ժողովրդեան առ Հռոմայեցիս։ Գալով սպարապետութեան, որ էր, որպէս ասէ, «ի վերայ ամենայն զօրաց բազմութեան Հայոց մեծաց»՝ Բուզանդ—թող փառաւոր գովեստը զոր կու տայ Մամիկոնեանց, կոչելով զնոսա «աներկիւղք, քաջասիրտք, քաջանունք, բարենշանք, բարեհամբաւք, յաջողակք ի գործ պատերազմաց, հանապազ յամենայն ժամ յաղթող, բարիանուն, երաքաջ»,—տալով նոցա վերադիր «աղանադրօշ (թերևս աղաւնադրօշ), արծուէնշան, վարժնականիշ» անուններ՝ կը թուի ակնարկել նոցա դրօշներն՝ աղաւնոյ, վարուժանի և արծուոյ նշաններով։

**4.** Երկրորդ կարևոր պէտքն էր, զկնի սպարապետութեանն և աշխարհական պաշտօնէութեանց՝ կաթողիկոսութիւնն, որոյ աթոռն էր պարապ մահուամբն Շահակայ։ Յետ եղերական վախճանի սրբոյ Յուսկանն, ինչպէս տեսանք, առ ի չգոյէ յարմարագոյն ուրուք ի զաւակէ Լուսաւորչին՝ աթոռակալութիւնը տրուեցաւ Փառէն անուն երիցու «ի գաւառէն Տարօնոյ, ի մեծէ մարգարէանոցէն Յովհաննու», որ և «նստաւ յաթոռն հայրապետական սակաւ ժամանակս», ասէ Բուզանդ։ Յետ սորա ընտրեցաւ ըստ Բուզան-

դայ՝ Շահակ ոմն «ի տոհմէ զաւակին Աղբիանոսի եպիսկոպոսին»։ Աղբիանոսս այս էր մին յեպիսկոպոսաց ձեռնադրելոց ի սրբոյն Գրիգորէ, որ և ըստ Ագաթանգեղոսի՝ «կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու»։ Աղբիանոս էր երևելի ի մէջ եպիսկոպոսաց նաև առ Խոսրովաւ, այնպէս որ Խոսրով և Վրթանէս զսա ընտրեցին երթալ համոզել ի մէջ երկուց նախարարութեանց, Մանաւազեանց և Որդունւոց, որ էին ի կռուի, և յետ ջնջելոյ սոցա՝ Մանաւազակերտ ոստանն Մանաւազեանց տրուեցաւ ի կալուած Աղբիանոսի։

**5.** Ձիարդ և իցէ՝ ի թագաւորելն Արշակայ արդէն վախճանած էր Շահակ. և որովհետև պատանին Ներսէս, որդին Աթանագինեայ որդւոյ Յուսկան հասած էր ի չափ՝ իբրև մի միայն արժանաւոր ժառանգ տան Լուսաւորչին՝ ժողովուրդը խնդրեց զնա յԱրշակայ ի կաթողիկոսութիւն, ոչ միայն վասն արժանաւորութեանն, այլև, «վասն զի, ասէին, նորոգեաց Աստուած զթագաւորութիւն ձեր՝ սոյնպէս պարտ է յայնմ զաւակէ (այն է ի զաւակէ Լուսաւորչին) նորոգել զհոգևոր նահապետութիւնն, զի ընդ նորոգել այնր աթոռոյ՝ նորոգեսցին պայծառ վարք աշխարհիս Հայոց»։ Զայսմ ընտրութենէ, որպէս և զանձնէ Ներսիսի՝ ժամանակակից և գործակից նորա Փաւստոս Բուզանդ կը գրէ այսպէս. «Ապա յականէ յանուանէ իսկ խնդրեցին աշխարհաժողով զօրքն բազմութեան զայն որ անուանեալ կոչէր Ներսէս, զորդի Աթանագենի, զթոռն քահանայապետին Յուսկան, որդւոյ Վրթանայ, որդւոյն Գրիգորի մեծին առաջնոյ քահանայապետին, և մօր նորա Բամբիշն (էր) անուն, քոյր արքային Տիրանայ։ Սա լեալ էր ամուսնաւոր յաշխարհակեաց կեանս նախ յառաջ մանկութեան, ի տղայութենէ սնեալ և ուսեալ ի Կեսարացւոց քաղաքին Գամրաց ընդ հաւատարիմ վարդապետօք և ցանկալի եղեալ իւրոց համարուեստն զուգակցաց։ Այլ ի ժամանակին յայնմիկ էր ի վարս զինուորութեան ի գործակալութեան, սիրելի սենեկապետ արքային Արշակայ, հաւատարիմ ի վերայ ամենայն կարգաց կենաց թագաւորութեանն» (Բուզ. Դ. Գ.)։ Ապա գալով ի նկարագիր անձին նորա՝ ասէ. «Էր սա մեծ և բարձր, ցանկալի հասակաւ և վայելուչ գեղով, տենչալի ցանկալի և զարմանալի և ահագին ամենայն նայեցող տեսողաց, և նախանձելի յարութեանն ի զինուորական կրթութեանն։ Երկիւղած ի Տեառնէ Աստուծոյ, յոյժ աւանդապահ պատուիրանաց նորա. մարդասէր, սուրբ, զգաստ, սաստիկ իմաստուն և առանց ակնառութեան, իրաւանց իրաւարար, ցածուն, քաղցր, խոնարհ, ի սրբութիւնս ամուսնութեանցն օրինաւոր և կատարեալ սիրովն Աստուծոյ և առ իւր ըն

կերս ըստ պատուիրանին՝ սիրել զամենայն ընկեր իբրև զանձն։․ Եւ զաղքատս և զտառապեալս այնպէս սիրէր և ակն ածէր ի վե րայ նոցա, զի զիւր ինչ զհանդերձս և զկերակուր հասարակէր ընդ նոսա․ և նեղելոց և տարակուսելոց օգնական և վերակացու, և ջատագով ամենայն զրկելոց լինէր նա։ Մինչ դեռ ևս զզինուորական ձևն յինքեան բերէր և զարդարեալ էր գեղեցիկ պատմուճանաւ ի զարդ վայելուչ և ցանկալի գեղով իւրով, երկայն հասակաւ և չքնաղատես հերօք վարսից իւրոց, կայր ի սպասու Թագաւորին մօտ ի սնարս արքային, զարքունական սուսերն զպողովատիկն զոսկեպատեանն հանդերձ ականակապ մարգարտազարդ կամարաւն ի սպասու նորա բարձեալ ունէր՝ առհասարակ ատեանն զբոլոք բարձեալ աղաղակէին, եթէ Ներսէս լիցի մեր հովիւ։ Զոր իբրև լուեալ, զբոլոք բառնալով զանձն անարժան համարեալ՝ չկամէր, չառնոյր յանձն։ Իսկ յորժամ տեսանէր զամենեսեան ի նոյն յառաջին բանին վերայ պնդեալ, զի զնոյն աղաղակէին առաջի Թագաւորին, ասէին, Ոչ ոք լիցի մեր հովիւ բաց ի դմանէ, և ոչ ոք նստցի այլ յայնմ աթոռ բայց դա․ իսկ նա զանձնն չկամէր արժանի իրին առ յոյժ խոնարհութեան իւրում․ ապա ի մէջ եկաց, սկսաւ խօսել զանձնէ իւրմէ զանօրէնութիւնս և զբամբասանս մեղաց՝ զոր իւր չէր գործեալ։ Զոր իբրև լուան բազմութիւնքն, գիտացեալ զստելն նորա վասն անձինն՝ ամենեքեան առհասարակ հանդերձ Թագաւորաւն Թալացեալ էին ի ծաղուէ․ իսկ զօրքն աղաղակէին առհասարակ․ Ի մեզ և ի գլուխ մեր դարձցին այն մեղք զոր գործեցերն, ի վերայ անձանց և ի վերայ որդւոց մերոց լիցին գործքն․ բայց դու զգործս հօրն քո Գրիգորի, զնոյն առաջնորդութիւն նորոգեա մեզ։ Իսկ նա իբրև այլ ինչ ոչ եգիտ տալ նոցա բանիցն պատասխանի՝ ասէր․ Անօրէնք էք և պիղծք․ ես ոչ կարեմ ձեզ հովիւ կալ, և ոչ զձեր մեղսդ ընդ անձամբ առնուլ․ ոչ կարեմ աչառել, և ոչ ձերում չարութեանդ համբերել․ այսօր տարապարտուց սիրէք դուք զիս, և վաղիւ իբրև ատելի և Թշնամի՝ Թակն զգլխոյ ձերմէ կոչկոճիչ կարծէք զիս։ Այլ զբոլոք բառնային բազմութիւնք զօրացն և ասէին, եթէ Այդ մեղաւորդ լիցի մեզ հովիւ։ Այնչափ պնդեալ էր մարդկանն, զի յԱստուծոյ տեսչութենէն լինէր այնպէս։ Ապա Թագաւորն Արշակ ինքն ձգեալ զսուսերն արքունական կամարաւն, զոր նմա Ներսէսն բարձեալ ունէր ի սպասու ըստ օրինաց սենեկապետութեանն՝ ի բաց հանէր ի նմանէ, և զհերսն գանգրագեղս զվայելուչ Թագագանգուր վարսիցն՝ զայն ի բաց խզել հրամայէր, և ընդ նմին զվայելուչ պատմուճանն՝ զայն ի բաց պատառել հրամայէր։ Հրաման տայր, և բերին զհանդերձս կղերիկոսաց, և զգե-

ցուցանէին նմա. եւ հրաման, և կոչեցին զծերունի եպիսկոպոսն որում անուն էր Փաւստոս, և տայր զնա ձեռնադրել ի սարկաւագութիւն։ Բայց յորժամ զհերսն դեռ վիրային ի նմանէ՝ առ յոյժ գեղեցկութեանն բազումք յարտասուս հարան որք տեսին զնա, ի գեղն աւեղկեալ՝ զկերպարանսն փոխելովն. այլ յորժամ տեսին զնա քրիստոսեան գեղովն զարդարեալ՝ բազմաց լինէր ուրախութիւն» (Անդ)։

Յետ ոչ բազում աւուրց ղրկուեցաւ Ներսէս հանդերձ մեծամեծ իշխանօք, որպէս վերագոյնն ասացաւ, ի Կեսարիա, առնուլ զձեռնադրութիւն կաթողիկոսութեան։ Բուզանդ հոս դարձեալ կը դիմէ յիւր սովորական արուեստն պատմելոյ սքանչելիս, որպէս թէ ի ժամու ձեռնադրութեանն աղաւնի մի թռուցեալ կու գայ կը նստի նախ սրբոյն Բարսղի վրայ, և ապա ի կատարել արարողութեանն՝ կ'երթայ հանգչել ի վերայ Ներսիսի.—«Ապա գումարեցին զիշխանսն մեծամեծս, և արձակեցին զՆերսէս բազում ընծայիւք և մեծամեծ պատարագօք և հաւատարիմ հրովարտակօք առ կաթողիկոսն Եւսեբիոս յերկիրն Գամրաց, ի մայր քաղաքացն նոցա ի Կեսարիա, զի ձեռնադրեսցեն անդ զսուրբն Ներսէս կաթողիկոսութիւն Հայոց Մեծաց։... Եւ եղեն մեծ սքանչելիք. զի մինչդեռ այն ինչ մտեալ էին յեկեղեցին՝ էջ աղաւնի սպիտակ ի վերայ սեղանոյն յանդիման քահանայութեանն և յանդիման ամենայն ժողովրդեանն։ Եւ իբրև եմուտ Եւսեբիոս արքեպիսկոպոսապետն և երիցունքն ընդ նմա, և երիցապետ մի սուրբ որում անուն Բասիղիոս կոչէր՝ թըռեաւ աղաւնին ի սեղանոյն և հանգեաւ ի վերայ նորա և յամեաց բազում ժամս։ Իսկ իբրև եհաս ժամն, կամեցան զՆերսէս ձեռնադրել՝ վերացաւ աղաւնին ի սրբոյն Բարսղէ և նստաւ ի վերայ գըլխոյն Ներսիսի» (Բուզ. Դ. Դ.)։

Ներսէս յետ ձեռնադրութեանն կը դառնայ ի Հայս իւր մեծաշուք ուղեկիցներով, և կ'ընդունուի յԱրշակայ, որ կ'երթայ նմա ընդառաջ մինչև Առիւծ կոչուած լեռը, հաւանականապէս արտաքոյ Մեծին Հայոց. քանզի ասէ յետոյ. «Եւ անդուստ յաշխարհն դարձան».—«Եւ եկին հասին նոքա (Ներսէս և որ ընդ նմայն էին նախարարք) մեծապարծ երևելի հոգևորազգեաց փառօք ի Հայաստան երկիրն. և արքայն Արշակ գնացեալ էր ընդ առաջ նոցա մինչև ի լեառն որ անուանեալ կոչի Առիւծ. և անդ պատահեալ միմեանց մեծաւ լրջմտութեամբ, լցեալք օրհնութեամբ ողջունիւն՝ անդուստ յաշխարհն դարձան»։

Ե. «Եւ նստաւ սուրբն Ներսէս յաթոռ հայրապետութեան. ի հովուութեանն նորա բազում խաղաղութիւն լինէր աշխարհին. զի

ի վարս կարգաց գնացից իւրոց նմանեաց իւրոյ հօրն մեծին Գրիգորի. արդարև հայրաբարոյ գտանէր» (Անդ)։ Ըստ Բուզանդայ՝ Ներսէս կը գործէր նաև սքանչելիս.—«Մեծամեծ նշանս և բժշկութիւնս առնէր հիւանդաց ուր դէպ լինէր»։ Բայց կարևորագոյն գործք Ներսիսի և որ կը թուին ճշմարտագոյն՝ էին եկեղեցական կարգք և կանոնք, որ ըստ հանգամանաց ժամանակին կրնան կոչուիլ նաև քաղաքական։ Բուզանդ խօսելով զկարգաց եդելոց ի Ներսիսէ՝ կը պատմէ մանր, թէ ինչպէս Ներսէս գումարելով ժողով եպիսկոպոսաց յԱշտիշատ, տեղի ժողովոց Հայոց «նախնեացն», իմա անդստին ի Գրիգորէ՝ դրաւ բոլոր երկրին համար օգտակար հաստատութիւններ, որպիսի տեսած էր անշուշտ ի Յոյնս, զոր օրինակ՝ աղքատանոցս և ուրկանոցս բորոտներուն համար, որ հեթանոսական անգթութեամբ կը թողուէին անդարման և անռոճիկ. հրամայեց չտալ նոցա թոյլ մուրանալ դրանէ ի դուռն. արգելեց հեթանոսաբար կոծ դնել մեռելոց. ամուսնացելոց համար ևս դրաւ կանոն, արգելլով մերձաւորաց հետ ամուսնութիւն. հաստատեց նաև այլևայլ տեղեր ի գաւառս գաւառս դպրոցներ յոյն և ասորի դպրութեան, ինչպէս յայտնի է՝ առ ի չգոյէ հայերէնին։ Լուիցուք նորին իսկ Բուզանդայ բանիցն որ կարի հետաքրքրական են. «Եւ ինքն երթեալ հասանէր ի կողմանս Տարօն գաւառին և ժողովէր առ ինքն զամենայն եպիսկոպոսունս Հայոց աշխարհին։ Ժողովեցան ի գիւղն Աշտիշատ, ուր զառաջինն զեկեղեցին էր շինեալ, զի նա էր մայր եկեղեցեացն և տեղի լեալ նախնեացն ժողովոց սիւնհոդոսին։... Յայնմ ժամանակի կարգեցին կազմեցին կանոնեցին յօրինեցին և արարին զամենայն ժողովուրդս երկրին Հայոց իբրև կարգ միաբանութեան վանականաց համաշխարհի, բայց միայն յամուսնութեան օրինացն։ Հրամայէր յամենայն յաշխարհս և ի գաւառս և ի կողմանս, ի կոյսս կոյսս, ի խորշս խորշս սահմանացն Հայոց զպատեհ տեղիսն զատուցանել, շինել աղքատանոցս և օրկանոցս, ի ժողովել զախտաժէտս և զօրկունս և զմարմնավարս և զամենայն ցաւոտս, և նոցին կարգել դարմանս և ռոճիկս և պատանս. և սոյն կամ եղև ամենայն սուրբ ժողովոյն՝ զի այնպիսիքն միայն նստեալ լիցին յիւրաքանչիւր կայեանս, և մի՛ ելանել ի մուրոյն տառապանս և մի՛ բնաւ ելանել ըստ իւրաքանչիւր դուրս, այլ զի ամենայն ոք պարտապան է նոցա։ (Պատուիրէր) զի մի՛ զմահ մարդկանն առանց դարձի միւսանգամ կենդանանալոյ համարիցին, և անյուսութեամբ ի վերայ գնացելոցն ոճիրս գործիցեն լալեացն կոծոյն»։ (Էր արդարև ի հնումն, ինչպէս ուրիշ հեթանոս երկիրներ՝ նոյնպէս ի Հայս. յուսահատաբար դնել կոծ ի վերայ մեռելոց, փետել զհերս, ցտել

զմարմինս, մինչև յանձն առնուլ կամաւոր մահուանս ի վերայ դիկանց։ Այսպիսի սպանութիւնք կը պատմուի թէ եղան ի մահուանն Տրդատ-Արտաշիսի ոյնչափ, մինչև, ըստ վիպասանաց, գանգատել որդւոյն Արտաշիսի, Արտաւազդայ, առ հայրն, թէ Մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս որպէս թագաւորեմ)։ «Պատուիրէր ևս, զի լինիցին յամուսնութեան օրինաւորք. մի՛ ստել և մի՛ դաւ բերել իւրեանց ամուսնութիւնընկալ կողմանց, և փախչել աւելի ի մերձաւոր և յազգին առհմակից խառնակութեան ամուսնութենէն, և մանաւանդ ի մերձաւորական ի նուոց, և որ գամ մի այսմ նման լեալ էր ինչ։... Կարգէր և ի տեղիս տեղիս դպրոցս յունարէն և ասորերէն յամենայն գաւառս Հայոց»։ Եւ ոչ այսչափ միայն, այլև «ամենայն աշխարհին պատուիրէր, ասէ Բուզանդ, և գլխովին թագաւորին, առհասարակ ամենայն մեծամեծացն և ամենեցուն, որ ոք ի վերայ ընկերին ունիցի իշխանութիւն՝ գութ ունել ընդ իւրեանց ծառայս և ընդ կրտսերս և ընդ աշակերտս, և սիրել (զնոսա) իբրև զընտանիս, և մի՛ անարժանս և աւելի տարապայմանս հարկօք նեղել քան զչափն, յուշ առնելով զի և նոցա տէր գոյ յերկինս»։ Գալով բուն անձին Ներսիսի՝ կը յաւելու Բուզանդ, թէ «այրեաց և որբոց և չքաւորաց հանգիստ և դարման առնէր, և աղքատք զօրհանապազ ընդ նմա ուրախ լինէին, և տաճար իւր և սեղան զօրհանապազ աղքատաց և օտարաց էր և հիւրոց։ Եւ այսպէս առ յոյժ աղքատասիրութեանն, զի թէպէտև շինեաց զամենայն աղքատանոցս ընդ ամենայն գաւառս և կարգեաց նոցա անդէն դարմանս, այնպէս զի ըստ իւրեանց անկողինս մահճացն մի ուրեք աշխատ լինիցին ելանել՝ սակայն և զիւր տաճարն առանց նոցա ոչ առնէր, այլ կաղք և կոյրք և մարմնահարք և խուլք և հաշմեալք և ցականեալք և կարօտեալք ընդ նմա և ի նորա ակրմբի դարմանէին բազմեալք։ Եւ ինքն իւրովք ձեռօքն լուանայր զամենեսեան, օծանէր, պատէր, և ինքնին իսկ ջամբէր նոցա զիւրաքանչիւր կերակուրս, և զամենայն ինչ ի պէտս նոցա ծախէր, և ամենայն օտարք ընդ նմա, ընդ հովանեաւ նորա հանգուցեալք դադարէին» (Բուզ. Դ. Դ.)։ Բուզանդ կը վերջացունէ իւր գովեստն զՆերսիսէ ասելով. «Ոչ երբէք ուրեք եղև նման նմա այլ ոք ի Հայաստան երկրին»։ Այս բանք Բուզանդայ են ապաքէն ժամանակին համար որ յառաջ քան զնա, և թերևս կայ չափազանցութիւն յայսմ. ընդհանրապէս խօսելով ճշմարիտ կը թուի սակայն, թէ Ներսէս էր արժանի մեծ անուանն, որով յորջորջի նա ի բովանդակ պատմութեան Հայոց։

7. Այսոքիկ են Ներքին ուղղութիւնք որ գործեցան ի սկըզ-

քան թագաւորութեանն Արշակայ։ Գանք այժմ արտաքին քաղաքականութեան նորա։ Արդէն ցուցուեցաւ, և է արդարև հաւանականագոյն, թէ երկու մեծ դրացի տէրութեանց հաճութեամբ առաւ Արշակ զիւր հայրենի թագաւորութիւնն որ արդէն ջնջուած էր, և զայս առնել հաճեցան, ինչպէս հաւանական է՝ Կոստանդ և Շապուհ, որ էին անդուլ ի պատերազմի ընդ միմեանս, յուսով կորզելոյ իւրաքանչիւր յիւր կողմն զՀայս, ուստի և բնական էր որ երկոքին ևս, գէթ առ երեսս, սիրով և բարեկամութեամբ գնային ընդ Արշակայ։ Կոստանդ յայտնեց այս բարեկամութիւնն ոչ միայն արձակելով զպատանդսն զորս տուած էր Տիրան, այն է զերկոսեան եղբօրորդիս Արշակայ զԳնէլ և զՏիրիթ, այլ և տալով նմա կին յօրիորդաց անտի կայսերական պալատանն զՈղոմպիա։ Բուզանդ զարձակումն պատանդիցն կ՚ընծայէ Վաղեսի, յայտնապէս շփոթելով զՎաղէս ընդ Կոստանդեայ, ինչպէս կը շփոթէ զՆերսեհ ընդ Շապհոյ։ Ըստ Բուզանդայ՝ Վաղէս յետ աքսորելոյ զՆերսէս որ ղրկուած էր առ նա հրեշտակութեամբ՝ որպէս թէ ի շնորհուկս Արշակայ կ՚արձակէ պատանդներն.—«Ապա վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն որ էր աշխարհին Հայոց ընդ կայսեր Յունաց՝ դէպ եղև առաքել զմեծ կաթողիկոսն Հայոց Ներսէս և ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն։... Իսկ թագաւորն Վաղէս արգել աքսորեաց զՆերսէս, և փոխանակ սորա արձակեաց զեղբօրորդիս թագաւորին Արշակայ զԳնէլ և զՏիրիթ» (Բուզ. Դ. Ե.)։ Կարգ պատմութեանն կը պահանջէ սակայն դնել զարձակումն պատանդիցն ի սկզբան թագաւորութեանն Արշակայ, ուստի և ի Կոստանդեայ և ոչ ի Վաղեսէ։ Նոյնչափ և աւելի ևս սխալ է դնելն Բուզանդայ զամուսնութիւնն Ողիմպեայ կնոջ Արշակայ յետ առնլոյ զՓառանձեմ։ Ըստ Բուզանդայ՝ Արշակ յետ առնլոյ կին զՓառանձեմ, երբ չսիրուեցաւ ի նմանէ՝ ղրկեց բերել տուաւ կայսերական տոհմէ զՈղիմպիա ի կնութիւն.—«Էառ իւր Արշակ կին զՓառանձեմ. և որչափ սիրէր արքայն Արշակ զկինն՝ նոյնչափ ատեաց կինն զարքայն Արշակ, ասելով թէ թաւ է մարմնով և թուխ է գունով։ Ապա իբրև կինն ի նա ոչ յանգոյց զմիտս իւր՝ առաքեաց արքայն Արշակ յերկիրն Յունաց, և խնդրեաց էած անտի կին ի կայսերական տոհմէն, անուն նորա Ողոմպի» (Բուզ. Դ. ԺԵ.)։ Չէ նաև հաւանական, թէ Ողոմպիա կը տրուէր կին Արշակայ, եթէ Արշակ էր արդէն ամուսնացեալ։ Երկրորդ անգամ՝ գիտենք այլուստ, թէ Ամբղաւիոսի ուրումն անձնապահապետի դուստր էր Ողոմպիա, խօսեալ Կոստասայ, և Կոստանդ տուաւ զնա կին Արշակայ։ Աթանաս կը պարսաւէ զԿոստանդ, թէ բարբարոսաց տուաւ

զՍղոմպիա, զոր խօսեալ էր ինքեան Կոստաս և մինչև ի վախճանն իւր պահեց զնա և կը սնուցանէր՝ որպէս զի առնէր զնա կին։ (Աթան. Թուղթ առ միայնակ. առ Գաթըրճ. Տեղ. պատմ. հտ. Բ. էջ 490, ծան. 3)։ Յայտ է ուրեմն, թէ այս ամուսնութիւն ևս եղաւ ի սկզբան թագաւորութեանն Արշակայ, ի կողմանէ Կոստանդայ, թերևս աւելի պնդով կապելու համար ընդ ինքեան զԱրշակ, և ոչ ի խնդրոյ Արշակայ, և որպէս կարգ պատմութեանն կը պահանջէ՝ յառաջ քան զառնուլն Արշակայ զՓառանձեմ։

8. Տապուհ որ կը դիտէր զգործս Կոստանդայ, մանաւանդ զխնամենալն նորա ընդ Արշակայ՝ խորհեցաւ ինքն ևս կապել զնա ընդ իւր այլ իմն օրինակաւ, ուստի հրաւիրելով զնա յարքունիս իւր, ուր մեծ պատուով ընդունեցաւ Արշակ՝ դրաւ ընդ նմա ուխտ, երդմնցունելով զնա յԱւետարանն։ Հոս կը պատմէ Բուզանդ Արշակայ սպարապետին Վասակայ հաւատարմութեան և համարձակութեան գործը, թէ ինչպէս սպանեց նա Տապհոյ ախոռապետն. անարգելոյն համար զԱրշակ, և գովուեցաւ այս անվեհերութեանն համար ի Տապհոյ։ Բայց Արշակ յետ դնելոյ զուխտն՝ խոյս կու տայ գաղտ թելադրութեամբ սպարապետին իւրոյ Վասակայ, և Տապուհ վրէժխնդրութեան համար կու տայ սպանանել զՄարի, երէց եկեղեցւոյն Տիզբոնի որ առած էր Արշակայ երդումը, և կը յարուցանէ հալածանս ընդդէմ քրիստոնէից.—«Յայնմ ժամանակի կոչէր առ ինքն Տապուհ արքայն Պարսից զթագաւորն Հայոց զԱրշակ, որ մեծարեցաւ ի նմանէ բազում պատուով և մեծաւ փառօք, բազում գանձու ոսկւով և արծաթով և ամենայն մեծութեամբ թագաւորութեանն, և իբրև զեղբայր, որպէս որդի գրգեալ եղև ի նմանէ, և երկրորդական զմեծ տունն տայր նմա յԱտրպատական աշխարհին, և ի միասին ի միում տախտի գահուն ի ժամ ուրախութեանն բազմէին, զմիագոյն զմիանշան զհամահանդերձ զարդու։ Եւ զմիօրինակ զթագն օրըստօրէ ինքեան և նմա թագաւորն Պարսից զարդ պատրաստէր, զոյգ երկոքին ի միասին որպէս զեղբարս հարազատս անբաժինս յղփացեալք էին ի միում ուրախութեան, և յանպատում ուրախութեան ուրախ լինէին։ Ապա եղև օր մի յաւուրց, եկն եմուտ թագաւորն Հայոց Արշակ շրջել զաւպաստանաւ միով զարքային Պարսից. իսկ ախոռապետն արքային Պարսից նստէր ի ներքոյ ի տան ասպաստանին։ Իբրև տեսանէր զթագաւորն՝ ոչինչ առ լուս կալեալ մեծարեաց զնա, և ոչինչ շուքս դնէր նմա, այլ և անարգանս ևս դնէր թշնամանաց, ասելով՝ ի պարսկերէն լեզու, թէ Այծից Հայոց արքայ, եկ նիստ ի խրձանս խոտոյ վերայ։ Զոր բանս իբրև լսէր սպարապետն զօրավարն Հայոց

Մեծաց որում Վասակն կոչէր, ի Մամիկոնեան տոհմէն՝ մեծաւ բարկութեամբ և բազում սրտմտութեամբ բարկանայր. ի վեր առեալ զսուսերն զոր ընդ մէջ ունէր՝ հարեալ անդէն ի տեղւոջն զախոռապետն արքային Պարսից գլխատէր ի ներքս յապարանի անդ։ Զի ոչ կարաց լսել և ժոյժ ունել իւրոյ թագաւորին զանարգանս. զիւր մահն առաջի եդեալ լաւ հաշուէր բազում անգամ՝ քան զտեառն իւրոյ լսել զվատթարութեան թշնամանս։ Իբրև ի Պարսից աշխարհին էին, յայլոց ի տեղի և ի նոցուն հրապարակի՝ աներկիւղ և անկասկած յանկարծօրէն զայսպիսի զգործ կարաց գործել։ Իսկ թագաւորն Պարսից յորժամ զայս լսէր՝ բազում շնորհ ունէր զօրավարին Վասակայ, ընդ քաջասրտութիւնն զարմացեալ և ընդ բազում աներկիւղութիւնն։ Եւ բազում պարգևաց և պատուոյ արժանի առնէր, զքաջութիւնն և զտէրասիրութիւնն գովեալ։ Վասն այնր իրաց մեծաւ սիրով սիրէր զնա և ըստ արժանի իւրում պատուէր զնա, մեծարէր զամենայն աւուրս հաշտութեանն և խաղաղութեանն որ ի մէջ նոցա էր։

**Գ.** Ապա մինչդեռ անդէն ևս էր արքայն Հայոց առ արքային Պարսից, և մեծ սէր էր ի մէջ նոցա և մեծ խաղաղութիւն՝ երկընչելով երկեաւ թագաւորն Պարսից Շապուհ, եթէ գուցէ ստեսցէ սիրոյն նորա Արշակ արքայ Հայոց և լիցի միաբան ընդ կայսերն Յունաց և կամ կողաքակ ինչ լինիցի ի նմանէ։ Եւ ոչ հաւատայր նմա, թէ սպահեսցէ առ նա զմտերմութիւն սիրոյն, և կացցէ յուխտին միաբանութեան ընդ նմա։ Վասն այսորիկ երդումն պահանջէր ի նմանէ, մինչև կարի ստիպեալ բռնադատեաց զնա. Հաւանեաց, ասէ, և երդուիր ինձ յօրէնս քո, զի մի ստեսցես ինձ։ Եւ իբրև կարի բռնադատեցաւ և ի նեղ անգաւ և շտապեալ տագնապեցաւ՝ ետուն հրաման ածել զերիցունս եկեղեցւոյն Տիսպոնի քաղաքի, որում անուն գլխաւորին Մարի. և բերին զԱւետարանն սուրբ, և տայր երդումն արքայն Պարսից Շապուհ արքային Հայոց Արշակայ՝ երդնուլ յաստուածեան Աւետարանն, զի այլ մի ևս ստեսցէ նմա, այլ կացցէ յուխտի նորա և պահեսցէ զդաշինս նորա։ Եւ վասն զի պատգամաւոր իրացս այսոցիկ էր տանուտէրն նահապետ Մամիկոնեան տոհմին, երէց եղբայր Վասակայ սպարապետին, որում անուն Վարդան կոչէր՝ մեծապէս արքայ Շապուհ յակն առեալ սիրէր զնա։ Իսկ իւր եղբայրն Վասակ զօրավարն Հայոց նախանձ բերէր ընդ երիցու եղբօրն իւրում ընդ Վարդանայ։ Կամեցեալ խանգար առնել ի մէջ նորա (Շապհոյ) և Արշակայ թագաւորին Հայոց՝ եա նմա (Արշակայ) փախչել։ Այլ ասէր Շապուհ (ցերիցունսն)։ Եթէ ձեր սրտի մտօք էր առեալ զերդումն՝ զիա՞րդ

կարէր նա ըստ հաւանութիւն ելանել երդմանցն և կամ փախչել։
Այլ, ասէ, գիտեմ զի կախարդութեամբ խաբեցէք զիս, և որ ունի
զօրէնսն ձեր՝ զնա սիրեցէք, և նենգութեամբ նմա խորհրդակից
եղեալ՝ լինէն փախուցէք։ Եւ կամիք դուք զտէրութիւն Արշակու-
նեաց ի վերայ ձեր և զնոյն խնդրէք։ Եւ երդնու արքայ Շապուհ
յարեգակն և ի ջուր և ի կրակ, եթէ ոչ միում մարդոյ որ յայդմ
օրէնս քրիստոնէութեան է՝ ոչ տամ ապրել. և հրաման տայր զա-
մենեսեան տանել սպանանել։ Եւ տանէին զգլխաւորն նոցա զՄարի
երէց, և զայլ երիցունսն և սարկաւագունսն, աւելի քան զեւթա-
նասուն այր, ի մի դուք զամենեսեան զնոսա փողոտէին, և զԱւե-
տարանն սուրբ յոր երդուաւ թագաւորն Արշակ՝ կապէր պատէր
երկաթի սարեօք, և իւրով մատանեաւ կնքեալ ի գանձատան հրա-
մայէր, և տայր հրաման պահել զգուշութեամբ։ Եւ յարոյց հալա-
ծանս մեծ Շապուհ արքայն քրիստոնէութեանն հաւատոց, հար-
կօք և պէսպէս վշտօք նեղէր զնոսա և հարուածովք բազում։ Եւ
յետ այսորիկ հրաման տայր ընդ ամենայն տեղիս իշխանութեան
իւրոյ, թէ որ միանգամ զանուն քրիստոնէութեան ունիցի յիշխա-
նութեան իւրում՝ զամենայն մարդ միանգամայն հանցեն ընդ սուր
և սատակեսցեն։ Ապա բիւրս բիւրուց կոտորէին և հազարս հազա-
րաց, զի այնպէս տուաւ հրաման ի թագաւորէն, զի ամենևին քրիս-
տոնեայ անուն ի սահմանս նորա մի գտցի» (Բուզ. Դ. ԺԶ, ԺԷ.)։

Ի պատմութեան աստ Բուզանդայ զհալածանաց Շապհոյ Բ.
կայ արդարև աւելաբանութիւն։ Գիտենք սակայն այլուստ, թէ առ
Շապհով Բ. գրեթէ անդադար հալածումն էր, և ոչ իսկ Կոստան-
դիանոսի միջնորդութիւնն (333) եղաւ բաւական՝ մեղմացուցանել
Շապհոյ հալածանաց խստութիւնը։ Սելևկիոյ եպիսկոպոսն Շմաւոն
սպանուեցաւ ուրիշ հարիւր կղերականօք (343), նոյնպէս երկուքին
յաջորդք նորա, և աթոռն մնաց դատարկ մինչև 365։ Սոզոմենոս
մինչև վեշտասան հազար կը հանէ ծանօթ սպանելոց թիւը։ Ապա-
քէն ժամանակ ժամանակ կը մեղմանար հալածումն. թերևս յայն-
ժամ ի շնորհս Արշակայ դադրած էր. բայց երբ փախաւ Արշակ
հակառակ երդմանն՝ Շապուհ զայրանալով եկեղեցականաց, թէ նեն-
գութեամբ առին զերդումնն՝ նորոգեց հալածումը։ Երկար և սաս-
տիկ հալածումն առ Շապհով, որ կը թուի լինել Շապուհ Բ՝—կը
յիշէ և մօգպետն առ Եղիշէիւ (էջ 101—105), կամ մանաւանդ Եղի-
շէ որ կու տայ մօգպետին խօսել քրիստոնէաբար. թէպէտ ի վախ-
ճանի, ասէ, ձանձրանալով Շապուհ կամ մանաւանդ յաղթուելով
քրիստոնէից հաստատամտութենէն՝ շնորհեց ընդհանուր կրօնական
ազատութիւն. այլ այս չէ հաւանական։ Այնպիսի ազատութիւն չյիշ-

ուէր ի պատմութեան ոչ առ Շապհով և ոչ առ յաջորդօք նորա։ Առ Յազկերտիւ Ա. միայն (400—421) դադարեցաւ հալածումն միջնորդութեամբ Հռոմայեցւոց (Թէոդոսի փոքու). բայց 418-ին նորոգուեցաւ միւսանգամ, երբ Աբդիաս եպիսկոպոս կործանեց ատրուշան մի ի Տօշ։ Առ Վռամաւ Ե. յաջորդաւ նորա (421—442), առ որով բարձաւ Արշակունեաց թագաւորութիւնն և որ սաստիկ թշնամի էր քրիստոնէութեան՝ այն աստիճան սաստկացաւ հալածումը, մինչև սղոցել զքրիստոնեայս։ Թէոդոս Բ. պատերազմաւ դադարեցուց զայն հալածումն յամին 422։

Թէպէտ, ինչպէս հաւանական է, խստութեամբ վարուեցաւ Շապուհ իւր քրիստոնեայ հպատակաց հետ ի վրէժ փախստեանն Արշակայ հակառակ երդմանն, զոր նենգութեամբ և ոչ՝ հաւաստեաւ եղած կը համարէր ի կողմանէ զերդումն ընդունող երիցանց՝ ընդ Արշակայ կը խօսէր քաղցրութեամբ և ողոքով ի ձեռն հրեշտակաց, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։

**10.** Այժմ գանք վերստին ի պատմութիւն Արշակայ ներքին գործոց, զորս, բմբէ, պիտի գտնենք շատ տխուր։ Արշակ տեսնելով թերևս զանձն այնպէս փայփայեալ երկու դրացի տէրութիւններէն՝ սկսաւ գնալ ամբարտաւանութեամբ ի հեծուկս ոչ նախարարաց միայն, այլև Ներսիսի.—«Զայնու ժամանակաւ Արշակ արքայ Հայոց ոչինչ կարի ի ճանապարհ Աստուծոյ գնացեալ լինէր. զի որչափ ի մատաղութեան հասակին ըստ աստուածեղէն իմաստութեանն գնացեալ լինէր՝ նոյնչափ յաւագութեանն ի լկտութիւն և ի շաղաշատութիւն հատաւ» (Բուզ. Դ. ԺԲ.)։ Արշակ տեսնելով նախարարաց ցրտանալն յիւրմէ, փոխանակ ջանալոյ շահել զվստահութիւն նոցա՝ ևս աւելի զայրացոյց զնոսա, շինելով յիւրում գաւառին ի Կոգ նոր քաղաք, ուր հրաւիրեց ամէն կարգէ մարդիկ, ևս և սրիկայս, ի պաշտպանութիւն իւր։ Տրտունջք կը յաճախեն. կը խրատէ զնա Ներսէս բառնալ զգայթակղութիւնն, բայց ի զուր. ի վախճանի կ'իյնայ տարափոխիկ ախտ քաղաքին բնակչաց մէջ. ի սակաւ ժամանակի լինի քաղաքն գրեթէ անմարդի, և Արշակ համարելով զիրսն իբրև աստուածուստ պատիժ՝ կը հաշտուի ընդ Ներսիսի և կը խոստանայ այնուհետև հնազանդել նմա.—«Զայնու ժամանակաւ շինեաց իւր արքայն դաստակերտ մի ի Հովիտն անուանեալ ի Կոգ գաւառի»։ Բուզանդ շատ տխուր կը նկարագրէ այս քաղաքը։ Յետ ասելոյ, թէ Արշակ հրաման հանեց բոլոր անզգամ մարդոց գալ բնակել անդ՝ ասէ. «Եւ ժողովեցան յայն տեղի ամենայն գողք և աւազակք, արիւնահանք, սպանողք, սուտք և մարդելոյզք, վնասակարք, գանձահատք, զրկողք, ստադատք, զրախօսք,

գերփողք, յափշտակողք, ժլատք:... Իսկ տեղին աւանանայր, քաղաքանայր, մեծացաւ, բազմացաւ և ելից զհովիտն ամենայն: Ապա տայր հրաման արքայն Արշակ դնել անուն դաստակերտին յիւրակից անունն Արշակաւան, և շինեցին ևս անդ ապարանս արքունի: Ամենայն մարդ զրկեալ էր իրօքն այնոքիւք, և բազմաց հասաչ աղաղակի տրտնջելոյն յաճախեալ բազմանայր:... Այլ Հայրապետն Ներսէս իբրև լսէր զամենայն անօրէնութիւնս չարութեան ծուռ գնացիցն թագաւորին՝ տրտմէր, լայր, ողբայր և կոծէր մեծամեծ հեծեծանօք, մանաւանդ վասն քաղաքին Արշակաւանին, զի անօրէնութեամբ և չարութեամբ և յափշտակութեամբ շինեցաւ բազում մեղօք: Ապա սուրբ Հայրապետն Ներսէս մտանէր առ թագաւորն, խօսէր ընդ նմա... իսկ թագաւորն ծաղր առնէր զբանս կաթողիկոսին, և մկթայր զնորա ասացեալսն:... Եւ մատնեաց Տէր զգիւղաքաղաքն զԱրշակաւանն ի ձեռս հարուածոց, և սկսաւ հատանել զոր չարակեղն իմն կոչեն, իսկ կէսքն ժանդ անուանեն, ելանէր ի վերայ մարդկանն և անասնոց»: Բուզանդ որ այս հարուածը կ'ընծայէ անիծիցն Ներսիսի՝ իբր երեք աւուր մէջ անմարդացեալ կը պատմէ բոլոր քաղաքը.—«Ոչ աւելի, ասէ, քան զերիս աւուրս յերկարեցաւ, զի անմարդացաւ. քան զքսան հազարք սատակեցան երդք մարդկան, առհասարակ սատակեցան կոտորեցան յանկարծօրէն քանդեցան, զի միահաղոյն եկն սատակումն ի վերայ նոցա: Յետ այնորիկ ինքնին թագաւորն ելանէր ի խնդիր Հայրապետին Ներսիսի, և գտեալ՝ խնդրէր ի նմանէ, զի մատուսցէ աղօթս վասն նորա, զի մի գուցէ և նա սատակեսցի, քանզի զարհուրեալ էր:... Ի գունս հարեալ մեծաւ աղաչանօք և բազում աղօթկերօք աղաչէր թագաւորն հաշտել ընդ նմա. և եդ ուխտ զի այլ ոչ ևս երբէք անցցէ զբանիւք նորա» (Բուզ. Դ. ԺԳ.): ԶԱրշակաւանէն խօսեցանք այլուր:

Բայց այս խոստումն Արշակայ չտևեց երկար: Արշակ գործեց աւելի մեծ անիրաւութիւն. թէպէտ յայսմ չունէր Արշակ յանցանս բաց ի դիւրահաւանութենէն՝ սակայն պարտ էր նմա անսալ գէթ խրատուն Ներսիսի, ըստ որոյ հրաման խոստացած էր չելանել:

**11.** Վերագոյնն յիշեցաք Փառանձեմ զոմն, իբրև երկրորդ կին կամ հարճ Արշակայ. տեսցուք այժմ, թէ ո՛վ և ո՛րպիսի կին էր սա: Փառանձեմ դուստր էր Անդովկայ նահապետին Սիւնեաց, նշանաւոր գեղեցկութեամբն, այլ ոչ նոյնպէս բարուցն լաւութեամբ: Զսա արարեալ էր կին եղբօրորդին Արշակայ Գնէլ զոր յիշեցաք ի վերոյ. բայց Տիրիթ միւս եղբօրորդին Արշակայ, հարեալ ի սէր կնոջն՝ խորհեցաւ հնարս կորուսանել զԳնէլ, զի թերևս լինէր նմա

հնար առնուլ զկին նորա յետ մահու առն նորա։ Այս խորհրդով չահեալ զոմանս ի մտերմաց արքայի, յորոց մին կը թուի թէ էր Վարդան Մամիկոնեան՝ սկսաւ ի ձեռն նոցա մատուցանել քսս ամբաստանութեան զԳնելայ առ արքայ, որպէս թէ Գնէլ ի խնդիր էր սպանանել զնա և առնուլ զթագաւորութիւնն, և այսմ պատճառ կը ցուցնէին մեծ սէրը զոր ունէին նախարարք առ Գնէլ։ Չէ բոլորովին անհաւանական, թէ գէթ ոմանք ի նախարարաց կամէին զթագաւորելն Գնելայ, որ ինչպէս կ'երևի, ըստ ներքին և արտաքին հանգամանացն՝ չէր անարժան թագաւորելոյ։ Չերևիր սակայն, թէ կար, գէթ ի կողմանէ Գնելոյ, յայտնի ինչ նշան թեկնածութեան ի թագաւորութիւն, մանաւանդ թէ ըստ աւանդութեան իրիք (Խոր. Գ. ԻԲ.)՝ Գնէլ զգուշացաւ յամենայնէ որ կրնար տալ կասկած Արշակայ։ Արշակ հաւատալով քսութեանց թշնամեացն Գնելոյ, կամ մանաւանդ բարեկամաց Տիրիթայ՝ կը խնդրէր կորուսանել զպատանին.—«Չայնու ժամանակաւ էր դուստր մի գեղեցիկ Անդովկայ ուրումն նահապետի Սիւնեաց որում անուն Փառանձեմ կոչէր, կարի անուանեալ գեղեցկութեամբ։ Ապա Գնէլ պատանեակն, եղբօրորդի արքային, էառ զնա կնութիւն իւր։ Եւ համբաւ գեղեցկութեան աղջկանն ընդ վայրսն տարածեցաւ, և համբաւ գեղոյ նորա յաճախեալ բազմանայր և հնչէր։ Ապա առ համբաւ ցանկութեան անուանն տռփեալ լինէր մին ևս հօրեղբօրորդին Գնելոյ որում անուն Տիրիթ կոչէր։ Վասնորոյ անկանէր ի գաղտագողոնս, մինչ զի զնուն իւր տեսանել կարասցէ։ Եւ յորժամ կարացն տեսլեանն որում ցանկայր՝ այնուհետև հնարս խնդրէր առն կնոջն կորստեան. ո՛ գիտէ զկնի նորա նմա հնար լիցի յափշտակել։ Ապա Տիրիթն ի հնարս նենգութեան մտանէր, և բազում վարձէր իւր օգնականս և սատարս, որով զիւր չարախօսութիւնն յառաջ վարել կարասցէ։ Եւ քսս ստութեան զԳնելոյն նենգութեամբ առ թագաւորն Արշակ մատուցանէր, թէ Գնէլ թագաւորել կամի և զքեզ սպանանել. և ամենայն մեծամեծք և նախարարք և ազատք սիրեն զԳնէլ, և ամենայն աշխարհիս նախարարք կամին զտէրութիւն նորա ի վերայ իւրեանց առաւել քան զքո։ Արդ, ասեն, գիտեա և տես, արքայ, զինչ գործեսցես, որպէս և կամիս, զիարդ մարթասցիս ապրիլ։ Եւ այսպիսի բանիւք գրգռէին զթագաւորն Արշակ, մինչև հաստատէին ի միտս թագաւորին զիւրեանց ասացեալսն։ Ապա ոխացեալ թագաւորն ընդ պատանեկին Գնելոյ՝ և բազում անգամ հալածական առնէր զնա և նիւթեալ լինէր նենգութիւն բազում ժամանակս» (Բուզ. Դ. ԺԵ.)։

Նաւասարդի ժամանակ կը կատարուէր ի Բագաւան ի յիշա-

տակ սրբոյն Յովհաննու տօն մեծ որ էր կարգեալ ի սրբոյ Լուսաւորչէն։ Արշակ և Ներսէս էին ի բանակին ի Շահապիվան որ մօտ էր ի Բագարան, և Գնէլ էր ի գեւղն անուանեալ Առաւիւտոց, որ չէր հեռի ի Շահապիվանէ։ Էր գիշեր, և կը կատարուէր պաշտօն նաւակատեաց տօնին, ուր առաջիկայ էր Ներսէս հանդերձ բազմութեամբ եկեղեցականաց։ Արշակ դիպող համարեցաւ տօնին պատճառաւ հրաւիրել զԳնէլ ընտանեօք ի բանակն, և կատարել սպանման խորհուրդը զոր կ՚երկնէր ի վաղուց։ Վարդան կը ղրկուի հրաւիրակ, և Գնէլ կու գայ համօրէն տամբն առաւօտուն մօտ, և զօրքն որ յառաջագոյն պատրաստուած էին՝ կը բռնեն զԳնէլ, որ իսկոյն կը տարուի կառափման տեղն, որ մօտ էր ի Շահապիվան, և կ՚սպանուի։ Ի զուր կը բողոքէ կինն առ Ներսէս, որ մըտնելով առ Թագաւորն ի վրանն՝ կ՚աղաչէ ընդ վայր. հրամանը կը կատարուի իսկոյն. Այս եղերական գործը կը պատմէ Բուզանդ երկար և արդարև վիպասանական ոճով.—«Զնաւասարդաց ժամանակօքն առնէր խորհուրդ Թագաւորն Արշակ կոչել առ ինքն զպատանեակն Գնէլ և սպանանել։ Առաքէր զՎարդան զեղբայր սպարապետին զնահապետ Մամիկոնեան տոհմին՝ մեծաւ երդմամբ և նենգութեամբ կոչել, զի մի խորհուրդն յայտնեսցի, գուցէ փախիցէ և ապրիցի։ Եւ էր բանակ Թագաւորին ի Շահապիվանի, ի բուն բանակի տեղւոջն Արշակունեաց, ի վերայ ասպարիսացն։ Վարդան եկն եգիտ զպատանեակն Գնէլ ի մօտաւոր տեղւոջն, ի գեւղն Առաւիւտոց անուանեալ։ Մեծաւ ուխտիւ և բազում պատրանօք զպատանեակն Գնէլ հանդերձ իւրով կնաւն և դրամբն հաւանեցուցանէր երթալ ի բանակն արքունի։ Թագաւորն Արշակ, ասէ, ոչ կամեցաւ զտօնս նաւասարդաց առանց քո անցուցանել, զի հաճեալ և քաղցրացեալ է ընդ քեզ, վասն զի ըստ բանից չարախօսացն ոչ ինչ գտաւ ի քեզ չարութիւն. և եհաս ինքն ի վերայ, զի կուր ցայժմ ատէր զքեզ որ ի նմանէն մեծ սիրոյ արժանի ես։ Ապա չուեաց ամենայն կազմութեամբ իւրով Գնէլ, երթեալ հասանէր ի բանակն արքունի զգիշերն ամենայն բազում փութով տագնապաւ, վասն զի վաղիւն հասելոյ առաւօտուն օրն լուսանայր կիւրակէն, և յայնմ աւուր տօն դիպեցաւ յիշատակի մեծին Յովհաննու, որ ի Գրիգորէ և ի Տրդատայ յաւանին Բագաւանին կարգեալ էր։․․ Եւ յայնմ գիշերի ցայգապաշտօն մեծ եղև ի բանակին առ կաթողիկոսին։ Իբրև առաւօտն ծագեաց՝ հասանէր վաշտն Գնելոյ ի բանակն արքունի. և մինչ Գնէլն արքունական բանակին լինէր միջամուխ՝ ազդ լինէր Թագաւորին եկն նորա։ Ապա ելանէր հրաման յարքունուստ՝ արտաքս ունել զնա և տանել սպանանել։ Եւ մինչդեռ գայր նա

ընդ բանակամէջն, էր հեծեալ յերիվարին իւրում. իբրև մերձ եղև ի հրապարակն արքունի՝ և անդ յարքունուստ հասանէին բազում սպասաւորք վառեալք, սուսերաւորք, նիզակաւորք, վաղրաւորք, սակրաւորք, սունաւորք և սպարակիրք հետևակք, որք մատուցեալք բուռն հարեալք ընկենուին յերիվարէ անտի զպատանեակն Գնէլ, և ձեռն յետս կապէին զնա և առեալ գնային ի տեղի կառափելոյն։ Եւ քանզի կին նորա եկեալ էր ընդ նմա ժանուաւ՝ ի նմին ի նորին վաշտու էր ընդ առն իւրում. իբրև տեսանէր թէ կալան զայր իւր և կապեցին՝ վաղվաղակի ընթացաւ յեկեղեցաւորանն ուր պաշտօն մարդկան բանակին առ Աստուած կատարէր, մինչդեռ առաւօտին աղօթքն մատչէին, և անդ մեծն Ներսէս եպիսկոպոսապետն։ Իսկ կինն հասեալ առ արքեպիսկոպոսապետն՝ գոյժ արկանէր զիւրոյ առնն տարապարտ կորուստն, ճչեալ մեծաձայն. Վաղ հասիր, ասէ, դեռ զամուսինն իմ զուր առանց վնասու և յանցանաց խողխողեն։ Իսկ նորա խափանեալ զպաշտօնն՝ ընթանայր ի խորանն արքունի. հասեալ ի դրացն ի ներքս առ Թագաւորն անգանէր։ Իսկ Թագաւորն իբրև տեսանէր զմեծ քահանայապետն, գիտացեալ զբարեխօսութիւն համոզելոյն վասն առնն մահուանն զի մի մեռցի՝ զիւր սամոյրսն զգլխովն ածեալ, ի մորթ կնջանն մտեալ, զիւր դէմս երեսացն ծածկէր, քնոյ պատճառ եդեալ, զի զնորա բանսն մի լուիցէ։ Սուրբն Ներսէս մատուցեալ բուռն հարկանէր զԹագաւորէն խօսել ընդ նմա։ Իսկ Թագաւորն սալացեալ ոչինչ լսէր. զերեսսն վտաւատօքն ծածկեալ՝ ոչ բանայր և ոչ կամէր առնել բանիցն պատասխանի, այլ ընկողմնեալ պատեալ ծածկեալ կայր ի գահոյսն, զի և շարժել անգամ ոչ տղէր։ Եւ մինչդեռ նա բանս ողոքոյ ընդ Թագաւորին խօսէր՝ գայր արքունուստ դահճապետն Երազմակ ի խորանն արքունի, սկսանէր պատմել. Ի գլուխ հանի, կատարեցի, ասէ, զամենայն հրամանս արքունի. առի գնացի զԳնէլ, տարայ մինչև յորմ Սիւսին, սպանի և անդէն թաղեցի։... Արդարև զպատանեակն Գնէլ առնուին գնային մօտ ի Սիւսն արքունի, և անդէն կառափէին ի սարակ լերինն, որում տեղւոյն Լսին անուանեալ է, մօտ յորմածս արգելոցացն որսոյն էրիոց, ընդդէմ մուրտաստանին աղբերացն բազմոցացն արքունի, յանդիման բանակետեղ բնին։ Ապա հրաման եղև յարքայէն. ամենայն մարդիկն որ իցեն ի բանակին, մեծ և փոքր առհասարակ՝ մի ոք իշխեսցէ չերթալ, այլ ամենայն ոք առհասարակ երթիցեն դիցեն աշխար կոծոյ և լացցեն զԳնէլ մեծ սեպուհն Արշակունի զսպանեալն։ Իսկ ինքն Թագաւորն գնացեալ ի լալիսն՝ նստեալ լայր զեղբօրորդին իւր զոր ինքն եսպան։ Երթեալ նստէր

մօտ առ գին, լայր ինքն և տայր հրաման կոծ մեծ և աշխար դընել շուրջ զսպանելով դիակամբն։ Իսկ կին սպանելոյն, Փառանձեմն, զհանդերձսն պատառեալ, զգէսս արձակեալ, մերկատիտ ի մէջ աշխարանին կոծէր. ձայն արկանելով ճչէր, յողբս արտասուաց աղխողորմ գուժի առհասարակ զամենեսեան լացուցանէր։ Իսկ թագաւորն Արշակ ի լալեան տեսանէր զկին սպանելոյն, տափէր և ակն դնէր առնուլ զնա իւր կնութիւն» (Բուզ. ԺԵ.)։ Այսպէս Արշակ ոչ միայն կու տայ սպանանել զանմեղն, այլ և շնական լըրբութեամբ կ'երթայ դնել կոծ առ դիակամբ նորա իբրև ընդ հենգն և՛ ազգին, և՛ Ներսիսի։ Արշակ նմանեցաւ արդարև Դաւթի, որ սպան զՈւրիա և առ զԲերսաբէէ. այլ իցի՜ւ նմանէր և ապաշխարելոյն. վասնորոյ լսեց վճիռը զոր Բուզանդ կը դնէ ի բերան Ներսիսի. «Այլ դու, Արշակ, փոխանակ զի զգործս Կայենի գործեցեր՝ զանէծսն Կայենի զգեցջիր. անկջիր կենդանւոյն ի թագաւորութենէդ քումմէ, և չարչարեսցիս առաւել քան զՏիրան հայր քո, և դառն մահուամբ զկեանս քո յերկրէս մեծ նեղութեամբ վճարեսջիր». բայց չլսեց ապաշխարելոյն աւետիսը, թէ «Եւ Տէր անցոյց զքև զմեղս քո»։ Եթէ ոչ կանխասացութիւն՝ գէթ զարմանալի նախատեսութիւն է և այն, զոր Բուզանդ կու տայ նոյն առթիւ ասել Ներսիսի բանիւ մարգարէին. «Ըմպել ազգին Արշակունեաց զյետին բաժակն, ըմպել արբենալ և կործանել, և այլ մի՛ ևս կանգնել։ Ո՜վ, ի՜նչ ահաւոր է իշխանի, իւր և իւր սերնդեան համար, փոխանակ լինելոյ պաշտօնեայ արդարութեան առ որ սահմանեալ է՝ լինել գործի անիրաւութեան։ Բայց մենք մատչինք յառաջ։

**12.** Մինչ այս կոծը կը կատարուէր՝ Տիրիթ, որ չէր գիտեր թագաւորին խորհուրդը՝ կը ղրկէ պատգամ առ կին սպանելոյն, թէ Մի տրտմիր. ես կ'առնում զքեզ. միթէ չեմ լաւ քան զԳնէլ։ Փառանձեմ կը հռչակէ Տիրիթայ պատգամը, և ձայնարկուք կ'սկըսին երգել։ Արշակ իմանալով Տիրիթայ նենգութիւնը՝ կը զայրանայ յոյժ, բայց կը լռէ առժամն։ Յետ աւուրց ինչ Տիրիթ կը խնդրէ թագաւորէն հրաման առնուլ զՓառանձեմ կնութեան։ Արշակ կը հասկնայ, թէ ինչ որ լսած էր զՏիրիթայ՝ էր ճշմարիտ, ուստի կ'որոշէ սպանանել զնա. Տիրիթ իմանալով կը փախչի, բայց բըռնուելով կ'սպանուի.—«Իսկ որ զնենգութիւն քսութեանցն նիւթեաց և դաւով ի վերայ իւրոյ հարազատին սպանութիւնս կատարեաց, զՏիրիթն ասեմ, որ յառաջագոյն հարեալ էր ի կնոջն յայնմիկ՝ սկսանէր ժոյժ չունել տափանացն, և մինչդեռ կոծն սաստկացեալ էր՝ պատգամ յղէր առ կին մեռելոյն, ասէ. Մի կարի զանձն քո աշ-

ճոխ առնէր այնչափ, զի այր բարի ես եմ քան զնա. ես սիրեցի զքեզ, վասն այսորիկ մատնեցի զնա ի մահ, զի զքեզ առից ինձ կնութեան։ Արդ մինչդեռ կոծ մոլութեան զգիտակամբն ջայլէին՝ զայսպիսի պատգամս առաքէր Տիրիթն առ կինն, որ բողոք բառնայր, թէ Լուարուք ամենեքեան, զի մահ առն իմոյ վասն իմ եղև, զի որ ինձ ակն եդ՝ վասն իմ զայրն իմ ետ սպանանել։ Զհերն փետէր, ճչէր ընդ կոծելն։ Ապա իբրև իրքն համարձակ յայտնեցան ի լսելիս ամենեցուն և ի ձայնարկուսն ամենայն՝ եղև նա մայր ողբոցն, և ձայնարկուքն ամենայն ի ձայն ողբոցն սկսան նուագել զիրս տափանացն Տիրիթայ, զակն դնելն, զքսութիւնն, զհնարս մահու նիւթել, զսպանումն. ձայնիւքն մրմնջոցն ի վերայ սպանելոյն ի մէջ կոծոյն բարբառէին գեղգեղեալ խանդաղատութեամբ։ Այսպէս իրն յայտնեալ հռչակ հարկանէր։ Իբրև լուաւ թագաւորն Արշակ և եհաս ի վերայ իրացն՝ զարմացեալ լինէր, արմանայր ընդարմանայր, սորջացեալ ի միտ առնայր զիրսն։ Ապա խօսել սկսանէր թագաւորն, ծափ զծափի հարեալ մեծաւ զղջմամբ ընդ իրսն զոր գործեաց, ասէ. Վասն զի ի կնոջն Գնելոյ անարժան սիրով հարաւ Տիրիթն՝ առ այնմ զչարիսն նիւթեաց, զքսութիւնն. զմահուն գոռութիւն զուր և տարապարտ, և զմեզ ևս արդար արեանն շաղախեաց վասն իւրոյ պղծութեանն. զեղբայրն իւր ետ կորուսանել, և զանհնարին չարիսն և զանէծս, որ ոչ անցանեն՝ ետ մեզ ժառանգել։ Իբրև այսպէս հասանէր թագաւորն յիրացն հաստատութեան վերայ և ճշգրտէր զիրսն՝ խլխլեալ անսայր բանին առ ժամանակ մի։

**13.** Իսկ իբրև զմեռեալն ծածկեցին անդէն ի տեղւոջն յորում սպանաւն, և աւուրք հարուստ անցին ի վերայ իրացն գործելոց՝ պատգամ յղէր Տիրիթն առ թագաւորն. Կամ լիցի, ասէ, քեզ արքայի, զի հրաման տացես, զՓառանձեմ կին Գնելոյ թող առից ինձ կնութեան։ Զոր իբրև լուեալ արքային՝ ասէ. Արդ հաստատ գիտեմ, թէ զոր լուայն ստոյգ է. վասն կնոջն իւրոյ եղև մահն Գնելոյ։ Եւ անդէն արքային մահ խորհէր, սպանանել զՏիրիթ ևս փոխանակ ընդ մահուն Գնելոյ։ Զոր իբրև լուաւ Տիրիթ՝ զահի հարեալ յարքայէն, գիշերի փախստական լինէր։ Ապա ազդ լինէր թագաւորին Արշակայ փախուստն Տիրիթայ. տայր հրաման թագաւորն Արշակ ազատագունդ բանակին զհետ լինել Տիրիթայն, զի իբրև հասցեն նմա՝ անդէն ի տեղւոջն սպանցեն։ Բազումք և քաջք զհետ լինէին փախուցելոյն Տիրիթայ. ապա երթեալ հասանէին ի գաւառին Բասենոյ ի մէջ մայրեացն, ի տեղւոջն յորում հասանէին՝ անդէն զՏիրիթն սպանանէին։

**14.** Արշակ կ'առնու կին զՓառանձեմ, որ կը ծնանի նմա

զՊապ, և նախանձելով ընդ Ողոմպի՝ կու տայ սպանանել զնա Մըր-ջիւնիկ անուն չար երիցու, հաղորդութեան հացին հետ խառնել տալով թոյն.—«Եւ յետ այսորիկ էառ իւր Արշակ զկին սպանելոյն զՓառանձեմն։ Եւ որչափ սիրէր արքայն Արշակ զկինն՝ նոյնչափ ատեաց կինն զարքայն Արշակ, ասելով, թէ Թաւ է մարմնով և թուխ է գունով։... Բայց ծնաւ ապա Փառանձեմ թագաւորին ուստր մի, և կոչեցին զանուն նորա Պապ, և սնուցին զնա և ի չափ հասուցին։ Եւ իբրև ջրթափեաց և եղև հուժկու՝ ետուն զնա պատանդ ի դուռն կայսերն յերկիրն Յունաց։ Իսկ Փառանձեմն մեծ նախանձու և ոխութեամբ գնայր ընդ Ողոմպինոյն, և խնդրէր սպանանել զնա դեղովք։ Իբրև ոչինչ հնարս մեքենայից կարէր գտանել,—վասն զի անձին իւրում կարի զգոյշ կայր նա, մանաւանդ ի կերակրոց և յըմպելեաց, բայց զիւրոց նաժշտացն կերակուրս արարեալ և զնոցին պարզեալ զգինի ճաշակէր,—ապա գդրան երէց ոմն արքունի Մրջիւնիկ անուն, յԱրշամունեաց տեղեացն ի նահանգէն Տարօն գաւառէն, զնա ի բանս արկանէր Փառանձեմն անօրէն։ Զանարժանս, զանկատար, զանջնջելի չարեաց մեղաց, չմոռացական աննջանաց կատարեաց նա զգործ, զանարժան, զանտես, զանլուր, որ ուրեք երբէք յումեքէ ի վերայ երկրի ոչ գործեցաւ։ Ընդ տէրունական ընդ սուրբ ընդ աստուածական մարմինն, ընդ հացն օրհնաց խառնէր զդեղն սատակման երէցն Մրջիւնիկ, տայր յեկեղեցւոջն Ողոմպիայ տիկնոջն և սպանանէր, և յանօրէնն Փառանձեմայ պարգև առնոյր զգեւղն որում անուն Գոմկունք կոչի, ուստի իսկ ինքն էր, ի նահանգէն Տարօն գաւառէն» (Բուզ. Անդ)։

**15.** Ներսէս, որոյ միջնորդութիւնն առ Արշակայ վասն Գնելոյ չեղաւ լսելի՝ մեկնեցաւ տրտմութեամբ ի թագաւորէն և այլ ևս չտեսաւ զերեսս նորա, ասէ Բուզանդ. ուստի Արշակ տաւաւ փոխանակ նորա ձեռնադրել կաթողիկոս զՉունակ ոմն, բայց բաց յեպիսկոպոսաց Աղձնեաց և Կորդուաց՝ ոչ այլ ոք յեպիսկոպոսաց եկաւ ի ձեռնադրութիւնն.—«Այլ սուրբ կաթողիկոսն Ներսէս այլ ոչ ևս յաւել տեսանել զերեսս թագաւորին Արշակայ մինչև յօրն նորին կորստեան. այլ փոխանակ Ներսիսի զՉունակ ոմն անուն կացուցին գլուխ քրիստոնէութեանն. և էր ստրուկ ի ստրկաց արքունի։ Ապա հրաման տայր թագաւորն կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին, զի եկեսցեն ձեռնադրեսցեն զՉունակն ի կաթողիկոսութիւն Հայոց։ Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ. բայց միայն Աղձնեաց և Կորդուաց եպիսկոպոսք եկին և զՉունակն ձեռնադրեցին կաթողիկոսութիւն ըստ հրամանի թագաւորին։ Եւ էր Չունակն այն զգօն, և

ոչ ինչ ունէր լեզու յանդիմանութեան կամ խրատու, այլ հաւանեալ էր թագաւորին զինչ և նա գործիցէ» (Բուզ. Դ. Անդ)։

**16.** Յետ գնալոյ սրբոյն Ներսիսի ի բանակէն արքունի, ասէ Բուզանդ, Արշակ սկսաւ ևս իմն աւելի համարձակ գործել։ Նախարարներէն զորս միանգամ կամէր՝ կոտոր սպանանել. զԿամսարականս, որ էին ազգականք թագաւորին՝ գրեթէ ջնջեց ազգովին, գրաւեց զերկիր նոցա յարքունիս և շինեց յերկրին նոցա յԱրշարունիս բերդ ամուր, այն է ղբերդն Արտագերից, որ այլ է ի հին բերդէն Արտագերից առ Եփրատաւ, փաղուց կործանեալ ի Հռոմայեցւոց. —«Ի ժամանակին յորժամ մերժեցաւ յարքունական բանակէն սուրբ եպիսկոպոսապետն Ներսէս՝ ոչ ոք գոյր ընդդիմացեալ թագաւորին որ տայր նմա զյանդիմանութեան զխրատն. այնուհետև ըստ կամաց չարութեան իւրոյ գնացեալ լինէր նա. և զբազումս ի նախարարացն կոտորեաց, և զբազմաց տունս հատանէր յարքունիս։ Բայց զտոհմս Կամսարականացն որ էին գաւառաց տեարք Շիրակայ և Արշարունեաց՝ ազգատ առնէր, և զգաւառսն ունէր յոստան։ Բայց յազգէն յայնմանէ մանկիկ մի փոքրիկ, անուն Սպանդարատ՝ թագուցեալ ապրեցուցանէր սպարապետն զօրավարն Հայոց Վասակ, և յետոյ լինէր նա ժառանգ աշխարհին։ Թագաւորն Արշակ հրաման տայր յԱրշարունեաց գաւառին շինել իւր բերդ մի ամուր Արտագերս անուն, և զգաւառն յուղեսա ի պատրաստութիւն համբարաց թողոյր բերդին, վասն զի կարի ամուր էր բերդն այն» (Բուզ. Դ. ԺԹ.)։

**17.** Ինչպէս կը տեսնուի յանցից Գնելայ՝ Արշակ կը գործէր շատ բան թելադրութեամբ ոմանց ի նախարարաց, որ աւելի մտերիմ և մերձաւոր էին նմա։ Այսպիսիք ոմանք էին յանուանէ Հայր մարդպետն և Վարդան նահապետն Մամիկոնեան տոհմին։ Այս այն մարդպետն էր, որ ինչպէս արդէն յիշեցինք՝ առ Տիրանաւ հարբն Արշակայ տուաւ կոտորել նախարարաց տոհմերէն զոմանս, ինչպէս զՌշտունիս և զԱրծրունիս, նոյնպէս և աւելի ևս չարիս կը գործէր սա իւր ազդեցութեամբն առ Արշակաւ ըստ Բուզանդայ։ Այս մարդպետն անգամ մը, մինչ էր հիւր առ Ներսիսի յԱշտիշատ՝ աբբենալով սկսաւ ամբարտաւանութեամբ սպառնալ՝ յարքունիս ունել Աշտիշատու եկեղեցւոյն կալուածներն, որոց գեղեցկութեան զարմացած էր, և համարելով այն տեղերն քբրև արդարև թագաւորավայել՝ ոչ սակաւ թշնամանս կը դնէր Տրդատայ, որ այնչափ և այնպիսի երկիրներ տուած էր պարգև կանանցահանդերձ մարդոց, այն է եկեղեցականաց։ Սուրբն Ներսէս իմացուց նմա մեղմով, թէ չէ բարւոք ցանկալ ուրիշի ստացուածոց. մանաւանդ

այնց որ նուիրեալ են Աստուծոյ, և թէ պիտի չհասնէր կատարել՝ ինչ որ սպառնացաւ։ Եւ արդարև յետ սակաւուց սպանուեցաւ մարդպետն դաւով յորսի ի Նաւասպայ ումեմնէ Արծրունւոյ.—«Եւ էր մարդպետն Հայր այր չար և ժանտաբարոյիւք անօրէն և անիրաւ քան զառաջին Հայր անուն մարդպետոն։ Սա կոտորեաց զոմանս ի նախարարաց ազգաւ ի ժամանակս թագաւորութեանն Տիրանայ արքայի, և սոյնպէս առ թագաւորութեամբն Արշակայ և՛ս չար քան զառաջինն գործէր չար առ ամենայն մարդ։ Այդ ելանէր սա շրջել ընդ մարդպետութիւնն իւր. ապա եկն էջ ի գաւառն Տարօնոյ ընդ իւր գեւղսն տեսանել։ Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն. զի հնգետասան գաւառ ձեռական իշխանութեան ունէին իբրև սեպհական ի բնմէ, և գլխաւոր գաւառք էին Այրարատ, Դարանաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք և որ ընդ մէջ նոցա և որ շուրջ զնոքօք»։ Այս գաւառներուն մէջ, կամի ասել Բուզանդ, ունէին եկեղեցիք, կամ թերևս, կաթողիկոսունք ի տանէ Լուսաւորչին՝ մեծամեծ կալուածներ։ «Եկն էջ Հայրն մարդպետ զիւրով իշխանութեամբ շրջել. ապա եկն և սուրբ կաթողիկոսն Ներսէս յառաջին տեղին, ուր նախ էր զեկեղեցին շինեալ ի Գրիգորէ և զվկայարանսն սրբոցն վկայիցն, և անդ զյիշատակս սրբոցն կատարէր։ Ապա դէպ եղև անցանել Հայր մարդպետին առ տեղօքն, ցանկացաւ ելանել ի սուրբ տեղիսն Աշտիշատու կալ յաղօթս և առնուլ ողջոյն ի սուրբ եպիսկոպոսապետէն Ներսիսէ։ Հրաման տայր սուրբ հայրապետն Ներսէս՝ եկեղեցն ճաշ պատրաստել։ Եւ մինչդեռ նոքա պատրաստէին ինչ ըստ նմա արժանի աւագօրէն սպաս՝ նա ելանէր յեպիսկոպոսական կայենէն յապարանիցն մինչև ի վկայարանս սրբոցն, ի մեծ և ի գեղեցիկ հրապարակին զերթևեկս առեալ շրջէր, զճեմս առեալ։ Ապա տեսանէր զգեղեցկութիւն վայրացն, զնիստ շքեղութեան ի բարձրաւանդակ տեղեացն և զնայեացն ի խոնարհ, զի կարի վայելուչ էր տեղին, և չարակնեաց։ Ապա եմուտ բազմեցաւ յուտել և յըմպել։ Իսկ յորժամ արբեցաւ՝ սխալակեցաւ, սկսաւ խօսել ներքինին ցանս հպարտս և ամբարտաւանս յարբեալեաց. դնէր թշնամանս Տրդատայ արքայի, ի մեռեալս և կենդանեացն ի կեանս, ազգի և ազգի և տոհմի Արշակունեաց թագաւորացն Հայոց։ Զիա՞րդ, ասէ, զայսպիսի տեղիս կանանցահանդերձ մարդկան տուեալ է և ոչ արանց։ Եւ զսուրբ տեղեօքն քամահեալ արհամարհէր և ասէր, եթէ Զայս տեղիս ի բաց քակեմք, զի աստ պարտ է շինել զապարանս արքունի, և թէ՝ Ես Հայր մարդպետ եթէ կենդանի իցեմ և առ թագաւորն հասից՝ որ ինչ աստ իցէ՝ զայն ի բաց փոխեցից, և որ աստ

իցեն զնոսա հանից, և զտեղիս արքունի սենեակ կազմեսցից։ Իսկ սուրբ եպիսկոպոսապետն յորժամ լսէր՝ ասէր. Տէրն մեր Յիսուս Քրիստոս որ ընտրեաց զայս տեղի դնել զանուն իւր աստ՝ պատուիրեաց մի՛ ամենևին յայլոց ինչ ակն դնել կամ ցանկալ, մանաւանդ որ ժլատեալք ի նորա նուէրսն բերեն աչս և այնմ ցանկան. վասն այսորիկ նա մի հասցէ առ այն որով սպառնացաւն, այլ խափան լիցի նմա բազում մակարդ մեղացն իւրոց գործելոց։ Ապա գնայր մարդպետն Հայր ի սուրբ տեղեացն, և էջ յափն գետոյն հոսանացն Եփրատու, ի հովիտսն Թանձրախուռն անտառին, ի գետախառնունսն երկուց գետոցն, ի Թաւուտ խարձիցն մամխեացն, յորում տեղւոջ էր ի հնոցն իմն քաղաք շինեալ Սանատրուկ արքայի (մասն Բ. եր. 262), որում անուն տեղւոյն Մծուրք կոչի։ Իբրև եկն եհաս յայն տեղի՝ ապա յուզեցաւ դատաստան բարկութեան ի Տեառնէ ի վերայ անօրէնն Հայրի։ Մատնեցաւ նա ի ձեռս առն միոյ որոյ անուն Շաւասպ կոչէր, մնացորդ ազգին Արծրունեաց։ Մինչդեռ նստէր նա ի կառս և երթայր զճանապարհն՝ եկն Շաւասպն։ Սկսաւ պատմել մարդպետին սուտ ի քմաց իւրոց և ասէ. Արջ մի տեսի սպիտակ իբրև զձիւն։ Եւ հրապուրեաց զմարդպետն իջանել ի կառաց անտի և հեծանել ի նժուգի. և մտեալ պառակէին մայրեացն։ Իսկ իբրև ընդ Թաւուտսն անկանէին՝ զկնի եղեալ սակաւ մի Շաւասպն, յետսագոյն մնացեալ՝ յետոյ յառաջ նետիւ հարկանէր զմէջ ներքինւոյն Հայրի, անդէն Թափ հանեալ զնետն. և անդ յերկիր անգեալ սատակեցաւ մարդպետն։ Եւ առն Աստուծոյ ասացեալն հուպ ընդ հուպ վաղվաղակի կատարեցաւ. զի ամենևին բան ի գետին ոչ անկանէր առն Աստուծոյ» (Բուզ. Դ. ԺԴ.)։ Շաւասպս այս, ինչպէս յայտնի է ի բանից Բուզանդայ, որ մնացորդ կ՚անուանէ զնա ազգին Արծրունեաց՝ էր համանուն պատանին, զերծեալն այն ցեղին կոտորածէն որ եղաւ առ Տիրանաւ։ Սպանումն Հայրի ի ձեռն Շաւասպայ կը ցուցնէ, թէ արդարև, ըստ պատմութեանն Բուզանդայ՝ Թելադրութեամբ ներքինւոյն եղած էր այն կոտորածն, որոյ վրէժն միայն և ոչ այլ ինչ էր մարդպետին բռնի օրհասն, զոր Բուզանդ, ըստ իւրում սովորութեան՝ կ՚ընծայէ ի վեր քան զբնութիւն պատճառի, այն է «բանից առնն Աստուծսյ», որոց չտար «ամենևին ի գետին անկանել»։

**18.** Արդէն յիշուեցաւ, թէ ինչպէս յետ փախստեանն Արշակայ Շապուհ ողոքով կը խօսէր ընդ նմա ի ձեռն պատգամաւորաց։ Այս պատգամաւորներէն յականէ յանուանէ կը յիշէ Բուզանդ զՎարդան Մամիկոնեան, որ եկաւ ի կողմանէ Շապհոյ հրովարտակաւ, ուր կը խոստանար Շապուհ մոռանալ ինչ որ եղաւ, յիշեցունելով նմա նաև երդումը՝ կը յորդորէր զնա կալ ի բանին։ Ըստ Բուզան-

դալ՝ Արշակ միտեալ էր անսալ խրատուն Տապհոյ, և սիրով ընդունելով զՎարդան՝ կը ղրկէ զնա ի տուն իւր հանգչել աւուրս ինչ աշխատութենէն։ Բայց Վասակ որ էր թշնամութեամբ և նախանձու ընդ եղբօր իւրում՝ միաբանեալ ընդ կնոջ թագաւորին Փառանձեմայ,—որ ունէր ոխ ընդ Վարդանայ, վասն զի սորա նենգութեամբ բռնուած և սպանուած էր այր նորա Գնէլ՝—հաւանեցոյց զթագաւորն, թէ Վարդան ի խնդիր էր մատնել զնա Տապհոյ, և գրգռեց զԱրշակ այնչափ, մինչև հրաման տրուեցաւ նմա երթալ դաւով սպանանել զեղբայր իւր զերէց ի տան նորա, մինչ էր նա յանզգոյշս, չառնելով երեսս կնոջ նորա անգամ, որ ի սպանման ժամուն էր յերկունս։ Այս եղերելի տեսարանը կը նկարագրէ Բուզանդ այսպէս. «Իսկ Վարդան, Մամիկոնեան տոհմին տանուտէրն, գայր հասանէր հրեշտակութեամբ յարքայէն Պարսից առ արքայն Հայոց Արշակ և մատուցանէր զհրովարտակն առաջի նորա։ Եւ տայր պատգամ, թէ որ ինչ եղև՝ այն ահա թողեալ լիցի. բայց դու յայսմ հետէ կաց յուխտին բանի և մի անցաներ ըստ բան երդմանցն քոց օրինաց յոր երդուար։ Ապա թէ ոչ՝ դու գիտես և քո օրէնքն որում ստեսն։ Իսկ Արշակ թագաւորն սիրով ունէր և սիրով լսէր պատգամին և հաւանէր զասացելոցն։ Եւ խաղաղութեամբ արձակէր զմեծ նահապետն ի տուն իւր, զի երթիցէ հանգիցէ յաշխատութենէն յերկայն ճանապարհէն, և գնաց։ Եւ յորժամ եկն նահապետն Վարդան առ Արշակ՝ ոչ դիպեցաւ անդ կըրտսեր եղբայր նորին Վասակ առ արքային։ Ապա յետ այսորիկ եկն Վասակն և գրգռէր զթագաւորն ընդ իւրում եղբօրն երիցու, ասելով, թէ Վարդան է որ մատնէ զքեզ թագաւորին Պարսից և կամի կորուսանել զքեզ. եթէ ոչ աճապարեսցես վաղագոյն սպանցես զնա՝ դու կորնչիս և աշխարհս Հայոց։ Ապա և կին թագաւորին ևս գրգռէր զթագաւորն սովին բանիւք, և զբանս զօրավարին Վասակայ հաւատարիմ առնէր նմա։ Վասն. զի ունէր նա զոխսն զայն ընդ Վարդանայ, զի նենգութեամբ ւ. դաւով և մեծաւ երդմամբ սա այս Վարդան կոչեաց զԳնէլն զայր նորա, յորժամ սպանանէր զնա թագաւորն Արշակ։ Իսկ կինն զնոյն ոխութիւնս պահէր նմա, վասն այնորիկ աւելի ևս գրգռէր կինն զթագաւորն ի վերայ նորա, մինչ զի և զօր գումարեցին ի վերայ Վարդանայ, զի երթեալք սպանցեն զնա, նա ինքն իսկ իւր եղբայրն Վասակ երթայր ի վերայ նորա։ Ապա երթեալ գտանէին զնա յիւրում գաւառին ի Տայս, յիւր ամուր բերդին, որում անուն Երախանի կոչի։ Իբրև տեսին զգունդն, թէ Վասակ է՝ ոչ ինչ երկեան և ոչ զգուշացան կամ կասկածեցին. Համարեցան զզօրն եղբօրն, թէ խաղաղութիւն է

*եկն նորա, մինչ իջին ի խորանին դուրս, զի էր հարեալ զխորանն ի ձոր յունջ բերդին։ Եւ մարդիկ զօրացն Վասակայ էին ամենեքեան ի ծածուկ վառեալք և ի վերայ ագուցեալք հանդերձ։ Եւ մինչդեռ նա լուանայր զգլուխ իւր մերկանդամ՝ հասանէին սուսերօք բազում մարդիկ, և խոցոտէին զնա, մինչդեռ նա կայր խոնարհեալ՝ զի արկցեն ջուր ի վերայ նորա։ Եւ ոչ ոք տայր ժամանել յառնել, զի անդէն ի կողի սպանանէին զնա։ Եւ կինն նորա յղի էր, և հասեալ էին աւուրք ծննդեան իւրոյ։ Մինչդեռ ի վեր ի բերդին նստէր ի գահոյս իւրում՝ եղև գոյժ սաստիկ. իսկ նա իբրև զձայն գուժոյն լսէր՝ վազէր ի գահոյից անտի, և ընդ վազելն ծնանէր զմանուկն. և կոչէին զանուն մանկանն յանուն հօր իւրոյ Վարդան» (Բուզ. Դ. ԺԸ.)։*

**19.** *Այս ամենայն գործ Արշակայ, թէ ուղղութիւնք նորա և թէ յոռութիւնք՝ կը թուին գործուած ի միջոցի իբր հինգ կամ վեց ամաց, այն է* 353—359, *թուական՝ երբ սկսաւ բուն պատերազմն ի մէջ Հռոմայեցւոց և Պարսից։ Յետ առաջին պատերազմին որ զերծոյց զՀայս և որոյ արդիւնք եղաւ թագաւորելն Արշակայ, թէպէտ յաղթութիւնն մնաց Հռոմայեցւոց կողմը՝ սակայն թշնամութիւնը չվերցաւ։ Ստէպ ստէպ ասպատակութիւնք լինէին* (355) *մերթ ի Հայս և մերթ ի Միջագետս Պարսից կուսէն, թէպէտ չկար յայտնի պատերազմ* 350-*էն հետէ, երբ Շապուհ չյաջողելով ի պաշարման Մծբնայ՝ դարձաւ յետս և կը գտնուէր իւր երկրին արևելեան ծայրն ընդդէմ բարբարոսաց ի պատերազմի.— «Գործակալք արքային Պարսից, ասէ Ամմիանոս, որոց գունդք կային բանակեալք առ եզերբ սահմանակից գետոց, մինչ տէրն նոցա կայր արգելեալ ի ծագս սահմանաց իւրոյ տէրութեանն՝ ոչ դադարէին արձակել հէնս նեղել զերկիր մեր։ Առաւել իմն յանդգնեալք յանպատիժն մնալոյ՝ առնէին նշաւակ աւառարութեանց իւրեանց մերթ զՀայս և մերթ զՄիջագետս, և զայս յանդիման առաջի աչաց կուսակալաց Հռոմայեցւոց, որ ոչ զայլ ինչածէին զմտաւ, բայց միայն զինչս քաղաքացեաց իւրեանց»* (*Ամմ.* *ԺԵ.* 13)*. և այլուր* (*ԺԶ.* 9) *ասէ. «Սակայն Պարսիկք խլրտէին յարևելս, առանց առնելոյ ասպատակ ի հեռաւոր տեղիս որպէս յառաջն. բաւական համարէին վարել զոմանս ի գերութիւն և հանել հօտս ինչ խաշանց և արջառոց։ Էր զի յաջողէին, գտանելով զմերսն ի գեղծի, էր եւս զի տեսեալ զմեզ հզօրագոյնս՝ վրիպէին յորսոյն իւրեանց։ Բազում այն էր, զի յոյս աւարի նոցա ելանէր ի դերև առ զգուշութեան զոր առնէին բնակիչքն՝ չթողուլ ինչ ընդ ձեռամբ նոցա»։ Մուսոնիանոս, Հռոմայեցւոց կողմանէ կուսակալ արևելից, «այր իմաս-*

տուն, քաղցրաբարոյ և բանիբուն», այլ գօշաքաղ, որպէս ասէ Ամմիանոս, տեսնելով զայս ամենայն և համարելով դիպող ժամանակ, քանզի ի նեղ անկեալ կ'երևէր Շապուհ՝ ի ձեռն Դենշապհոյ ուրումն առաջարկեց (356) Շապհոյ առնել հաշտութիւն. բայց ի պատճառս հեռաւորութեան տեղւոյն ուր կը գտնուէր Շապուհ՝ թուղթերը կը հասնէին անագան։ Ահա բանք Ամմիանու. «Արդէն եղեն բանք զՄուսոնիանոսէ կուսակալէ (արևելից), զանէ նշանաւորէ, որ սակայն ագահ էր բարուք և զոր ակնկալութիւն շահու դիւրաւ իմն խոտորեցուցանէր ի պարտուց։ Մուսոնիանոս ունէր լրտեսս յաջողակս ի մէջ Պարսից, և ի ձեռն նոցա ջանայր ի վերայ հասանել մտաց թշնամւոյն։ Ըստ տեղեկութեանն զոր տային լրտեսքն՝ Շապուհ յայնժամ զբաղեալ ի ծագս սահմանաց իւրոյ տէրութեանն՝ հազիւ իմն և ոչ առանց մեծի կորստեան մարթէր ունել ի չափու զազգս պատերազմողս։ Իբրև զայս լուաւ Մուսոնիանոս՝ սկաւ բանագնաց լինել գաղտ ի ձեռն ոմանց աննշան զինուորաց ընդ Դենշապհոյ ումեմն որ էր հրամանատար զօրուն Պարսից որ զմերով կողմամբ, ստիպէր զնա տալ տեառն իւրում թըղթովք խրատ՝ փութալ խօսել ի հաշտութիւն ընդ կայսեր։ Այսու, ասէր, առնիցէ զկողս և զթիկունս իւր յապահովս, և եղիցի ազատ տանել զբովանդակ զօրութիւն իւր անդր՝ ուր հզօրագոյն է թըշնամին։ Հաճեալ Դենշապհոյ ընդ խորհուրդն՝ գրէր առ Շապուհ, եթէ Կոստանդ ըմբռնեալ սաստիկ պատերազմաւ այլուր՝ խնդրէր թախանձանօք խաղաղութիւն։ Այլ անցանէր ոչ սակաւ ժամանակ, մինչև հասանէին թուղթքն ի ձեռս Շապհոյ» (Ամմ. ԺԶ. 9)։ Հազիւ 358-ին եկաւ պատասխան ի Շապհոյ, որ կ'ընդունէր առաջարկութիւնը ծանր պայմանօք, պահանջելով յետս զՄիջագետս և զՀայս, զոր Հռոմայեցիք, ասէ, դաւով հանեցին ի հաւէն իւրմէ Ներսեհէ։ Կոստանդ չառաւ յանձն պայմանը։ Շապուհ վախճան տալով պատերազմին ընդ բարբարոսս և առնելով իւր դաշնակից զթագաւորն Հոնաց՝ դարձաւ ի Տիզբոն։ Հրեշտակք Կոստանդեայ եկան ի Տիզբոն հաւանեցուցանել զՇապուհ, բայց չյաջողելով դարձան յետս, և սկսան երկուստեք պատերազմին պատրաստութիւններն (358).—«Թագաւորն Պարսից յետ ընդ երկար կռուելոյ ընդ ազգս տրուարձանեալս՝ կռէր դաշինս նիզակակցութեան ընդ երկուս հզօրագոյնս ի ցեղից անտի, այն է ընդ Հոնս և ընդ Գեղս, և մինչ հանդերձէր դառնալ յետս՝ ընկալաւ զթուղթն, որով ազդառնէր նմա Դենշապուհ զյօժարութիւն կայսերն առնել խաղաղութիւն։ Ի միտ առեալ Շապհոյ, եթէ ի նեղ անկեալ էր կայսր՝ առաւել ևս ամբարտաւանէր։ Հաճել հաճէր առնել խաղաղութիւն, այլ

կամէր դնել պայմանս խիստս։ Առաքէր առ Կոստանդ հրեշտակութեամբ զՆերսեհ ոմն հանդերձ հրովարտակաւ, որ լի էր ամբարտաւանութեամբ ըստ սովորութեան Պարսից և որոյ պատճէն այսպիսի ինչ էր. «Արքայից արքայ Շապուհ, հաղորդ աստեղաց, եղբայր արեգական և լուսնի. Կոստանդայ կայսեր, եղբօր իմում ողջոյն շատ։ Ուրախ եմ յոյժ, զի զգաստացար յակն դնելոյ կարի յինչս այլոց։... Երկիր իշխանութեան իմոյ հարց ձգէր մինչև ի Ստրիմոն գետ և մինչև ի սահմանս Մակեդոնացւոց։ Ձեր իսկ պատմութիւն վկայէ այսմ։ Զայսոսիկ պահանջել իրաւունք են ինձ. այլ ես խնդրեմ զՄիջագետս և զՀայս որ հանան ի հաւէն իմմէ նենգաւ։... Կամիս զհետ երթալ բարւոյ խրատու.—խոտեա զդոյզն մասն որ պատճառ է քեզ կռուոյ և արիւնհեղութեան, զի զմնացեալսն ունիցիս անկասկած։ Լեր նմանող իմաստութեան բժշկի, որ արկանէ ի կեր դանակ և խարանս ի բառնալ զփուտն, զի զառողջ մասնն պահեսցէ։ Չիք յանասունս անգամ որ չգիտիցէ բնական ազդմամբ, եթէ պարտի հատանել ընկենուլ յանձնէ՝ որ ինչ տայ որսորդին զհետ մտանել նմա։ Իսկ որ ինչ վասն իմ է՝ ի դառնալ դեսպանին իմոյ ձեռնունայն՝ յետ անցանելոյ ձմերայնոյն, յարդարութիւն և յիրաւունս իմ ապաստան՝ արարից զոր ինչ ձեռնհաս իցեմ»։ Կոստանդ, ասէ Ամմիանոս, յետ ընթեռնլոյ զթուղթս և խորհելոյ քաջ՝ ետ պատասխանի հանդարտութեամբ. «Կոստանդ, միշտ աւգոստոս, յաղթող ի ծովու և ի ցամաքի. եղբօր իմում Շապհոյ խնդալ։ Ուրախ եմ ընդ ողջամբ դարձ քո իբրև բարեկամ, եթէ կամիցիս. այլ չեմ հաճ ընդ անյագն և անչափ ցանկութիւն քո մեծանալոյ։ Ինձ պիտոյ են, ասես, Հայք, որպէս և Միջագետք, և տաս ինձ խրատ՝ յապաւել զառողջ մարմին զի մնասցէ ողջ. խրատ՝ որ արհամարհանաց արժանի է մանաւանդ քան ընդունելութեան։ Ահա ճշմարիտն զոր չէ պարտ ծածկել։ Ոմն ի գործակալաց իմոց կամեցաւ, առանց իմոյ գիտութեան, խօսել զհաշտութենէ ընդ միում ի զօրավարաց քոց ի ձեռն արանց աննշանից։ Ես ոչ անարգեմ զայս և ոչ մերժեմ, եթէ չխնդրիցի յինէն այնպիսի ինչ, որ չէ արժան և վայելուչ և կամ որ բերիցէ արատ իմում պատուոյ։ Արդարև անճահ իմն է և անհեդեդ, մինչ ամենեցուն ականջք հնչեն ի համբաւոյ իմոց յաջողութեանց, մինչ պարտութիւն բռնաւորաց արկանէ զհամօրէն հռոմէական աշխարհն ընդ իմով ձեռամբ՝ առնուլ յանձն մանրել զոր պահեցաքն ցարդ անեղծ ի բազում վիշտս վտանգաց յարևելս։ Ոն անդր ի բաց տար զսպառնալիսդ. չիք ոք անգէտ, եթէ առ իմաստութեան մանաւանդ քան առ վատութեան ինչ ընտրեմք զգուշանալ, քան յախուռն մտանել ի

մարտ պատերազմի. այլ յարձակումն ինչ, եթէ երբէք լինիցի յեր-կիր մեր՝ գտցէ զմեզ պատրաստ ի վանել զնա յետս։ Ի փորձոյ և ի պատմութենէ գիտեմք, զի եթէ երբէք դեդևեցաւ Հռոմ ուրեք ի կռուի՝ ոչ երբէք վատթարացաւ ի սպառ»։ Հրեշտակ արքային Պարսից ոչինչ վճարեալ մեկնեցաւ, զի չէր իսկ առաւել քան զայս արժանի մեծարանաց ժլատութիւն Շապհոյ. այլ յետ ոչ բազում աւուրց Կոստանդ արձակէր դեսպանութեամբ զՊրոսպէր կոմս և զՍպեկտատոս տրիբուն և Նոտար, յորս յաւելաւ ի խնդրոյ Մուսո-նիանու Եւստաթիոս փիլիսոփոս, այր բանիբուն և խօսող, հանդերձ հրովարտակաւ կայսեր և ընծայիւք, հրաման առեալ ջանալ կասե-ցուցանել զպատրաստութիւնսն Շապհոյ, մինչև փութասցեն մերքն ամրացուցանել զհիւսիսային սահման մեր։ Երեցունց դեսպանացն հասեալ ի Տիզբոն՝ մատուցին զհրովարտակն և զընծայս առաջի թագաւորին որ այն ինչ դարձեալ էր. ջանային ածել ի հաւան զթագաւորն առնել հաշտութիւն առանց նոր ինչ պահանջելոյ, ոչ ինչ թուլացեալք՝ յորոց պահանջէրն օգուտ և պատիւ տէրութեանն, պնդեալ մանաւանդ չառնել ինչ փոփոխումն վասն Հայոց և Մի-ջագետաց։ Յետ երկար ջանալոյ խախտել զյամառութիւն թագաւո-րին, իբրև տեսին եթէ պնդեալ յամառեալ էր նա խնդրել յետս զերկոսին աշխարհսն որ յիշեցան, ոչինչ կարացեալ վճարել՝ դարձան։ Յետ այսորիկ վասն նոցին իրաց առաքեցաւ Ղուկիղիանոս կոմս և Պրոկոպիոս դպիր, որ յետոյ ի հարկէ իմն բռնադատեալ մտաբերէր յապստամբութիւն» (Ամմ. Անդ)։

**20**. Յաջորդ տարին (359) Շապուհ մեծ պատրաստութեամբ, նիզակակցութեամբ թագաւորին Հոնաց, կ'անցնի զՏիգրիս.—«Թա-գաւորն Պարսից զօրացեալ օգնականութեամբ ազգաց վայրենեաց ընդ որս լեալ էր դաշնակից, և վառեալ ցանկութեամբ ընդարձա-կելոյ զտէրութիւն իւր՝ կուտէր յամենայն կողմանց զօր բազում, զէն և զարդ և պաշարս։ Զդիւն կարդայր, զհմայս հարցանէր, և այսպէս յարդարեալ զամենայն՝ խորհէր յարձակել ի սկզբան գար-նայնոյն» (Ամմ ԺԸ. 4)։ Հռոմայեցիք մեծ տագնապի մէջ էին։ Քաջն Ուրսիկինոս, սպարապետ արևելից, որում յաջորդած էր Սա-բինիանոս անպիտան ծերունի՝ կոչեցաւ յարևմտից ուր ղրկուած էր, և կարգեցաւ զօրավար։ Ուրսիկինոս որում ընկեր էր Ամմիանոս՝ եկաւ յարևելս։ Զօրավարն քաջ իմանալով Պարսից դիտաւորութիւնը՝ փութաց ամրացունել զՄծբին։ Բայց Պարսիկք որ անցած էին զՏիգ-րիս՝ թողլով ամուր քաղաքներ, ինչպէս նաև զՄծբին՝ կ'երթային դէպ ուղիղ յԵփրատ, զոր կը դիտէին անցանել։ Յայնպիսում վը-տանգի հարկ իմն էր կոչել զՈւրսիկինոս, որ վասն անհնարին յաջո-

ղակութեանն և հմտութեան կռուելոյ ընդ Պարսիկս՝ էր կարևոր յոյժ յարևելս:... Այն ինչ հասեալ մեր մօտ յԵբրոս գետ՚.. գտաք զհրովարտակ կայսերն, որ հրամայէր մեզ փութալ գալ ի Միջագետս, թէպէտ և անօգուտ էր պաշտօն մեր, զի յայլոյ ձեռս էր իշխանութիւնն: Իսկ և իսկ յուղի անկեալ եկաք յանդիման լինել Սաբինիանու, որ ընկալաւ զմեզ արհամարհանօք:... Սակայն համբաւն զոր բերէին լրտեսք զպատրաստութենէ զօրութեանն Պարսից՝ էր միաբան բանից փախստէիցն: Ուստի թողեալ մեր զայրն (զՍաբինիանոս)՝ փութացաք երթալ ամրացուցանել զՄծբին, երկուցեալ թէ գուցէ թշնամին որ թուէր զանց առնել զքաղաքաւն՝ գտցէ զնա ի զեղծի: Մինչ մեք զգործով ամրութեանն էաք ի ներքս ի քաղաքի անդ՝ սիւնք ծխոյ և նշոյլք լուսոյ, որ երևեալ յայնկոյս Տիգրիս գետոյ տակաւ մերձենային հուպ ի սահման անդր քաղաքին՝ յայտ առնէին, եթէ յառաջապահք Պարսից անցեալ էին ըստ գետն, և սկսեալ էր աւերն: Փոքր միւս ևս՝ և անկեալ էր իմ ի ձեռս նոցա: Մտրակեալ զերիվարն՝ սիրտ ի բերան եկի առ մերսն: Ուրսիկինոս ևս խոյս ետ:.. Ձերծեալ ի վտանգէ աստի՝ եկաք ի տեղի մի անտառախիտ, լի այգեստանօք և պտղատու ծառովք:.. Սակայն տագնապ էր մեզ, և աhն սաստկանայր ևս քան զևս, վասնորոյ աճապարեալ անկաք յԱմիդ, քաղաք՝ որ աղետիւքն եղև այնպէս անուանի առյապայ:.. Այլ զօրն Պարսից եթող զՄծբին աստի, չհամարեալ արժանի զկայ առնուլ անդէն» (Ամմ. ԺԸ. 6, 7):

**21.** Չէ անհաւանական, թէ այս միջոցին էր որ Արշակ ի գլուխ տարաւ առ Մծբնաւ Հռոմայեցւոց դէմ այն յաղթութիւնը, զոր այնպէս մանր կը պատմէ Բուզանդ: Անհնար էր Արշակայ, իբրև բարեկամ և դաշնակից երկու տէրութեանց ևս՝ չօգնել միումն կամ միւսում. կը թուի սակայն թէ էր վարանեալ: Յօժարագոյն էր օգնել Յունաց, բայց տեսնելով նոցա տկարութիւնը որում չկարէր լինել անգէտ, թերևս արհամարհանս ևս կրեալ ի նոցանէ, ինչպէս կ՚ակնարկէ Բուզանդ—«Ոչ շուք ինչ եդին նմա և ոչ մեծարանս»,—կ՚սպասէր, թէ ո՛ր կողմն առաջ պիտի կոչէր զնա յօգնութիւն: Նապուհ որ յետ մահու սիրելւոյն իւրոյ Վարդանայ ևս չէր դադարած ի յորդորելոյ զԱրշակ պահել ընդ նմա զուխտն՝ կը խնդրէր ստիպաւ օգնել նմա առաջիկայ կռուոյն մէջ: Հարկ իմն էր այնուհետև Արշակայ երթալ, և արդարև ըստ Բուզանդայ չոքաւ իւր զօրաց բազմութեամբ իւր տէրութեան հարաւային սահմանը դէպ ի Մծբին, որ էր ճանապարհ արշաւանին Նապհոյ, և առանց սպասելոյ գալստեան Պարսից՝ տարաւ, ըստ Բուզանդայ, նշանաւոր յաղթութիւն ի գլուխ հռոմայեցի զօրուն դէմ: Նապուհ

հանելով կը տեսնէ կատարուած մեծ յաղթութիւն ի ձեռն Արշակայ, և մեծ շնորհակալութեամբ կը պատուէ զԱրշակ, և ի հատուցումն այն մեծ ծառայութեան նորա՝ կ'առաջարկէ տանել զնա ի Պարսս և փեսայացուցանել զնա ինքեան։ Բայց աներ նորա Անդովկ, որ կը խորհէր թէ զուցէ դուստր իւր Փառանձեմ անարգուէր, եթէ Արշակ առնուր կին զդուստրն Տապհոյ՝ միանալով ընդ Վասակայ սպարապետին, կաշառելով ևս զոմն ի մտերմաց Տապհոյ՝ հաւանեցոյց զԱրշակ, թէ Տապուհ կը խորհէր արկանել զնա յաբոգայթ, տանելով զնա ի Պարսս, և սպանանել։ Արշակ հաւատալով այսմ՝ ամէն բան կը թողու և կը փախչի գիշերայն իւր զօրօքն։ Տապուհ կը գուշակէ, թէ նենգութեամբ իւրոցն եղաւ այս, կը յղէ դեսպան զկնի նորա գալ և յայտնել չարախօսաց նենգութիւնը, բայց ի զուր։

**22.** Արշակ այնուհետև լսել անգամ չկամէր Տապհոյ անունը, և սկսաւ յայտնի թշնամութիւն ի մէջ Արշակայ և Տապհոյ, մանաւանդ երբ Հռոմայեցիք հրաժարեցան դաշամբ Հայաստանէ, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև.—«Իբրև փախեաւ թագաւորն Արշակ յարքայէն Տապհոյ և անարգեաց զնա յետ երդմանց իւրոց՝ զառաջինն Տապուհ արքայն Պարսից ոչ ինչ խստութեամբ ջանացաւ ընդ նմա, վասն զի մարտ դեռ բազում սաստկացեալ էր ի մէջ իւր և ի մէջ թագաւորին Յունաց։ Եւ իբրև հաղ քան զհաղ յաւել լինել պատերազմ՝ թագաւորն Հայոց Արշակ զառաջինն ընդ միտս իւր մեծամտեալ էր, և նայէր տեսանել, թէ ով ի նոցանէն կոչեսցէ զնա ի թիկունս օգնականութեան յաղագս գործոյ պատերազմին։ Ակն ունէր երթալ կամելով յօժարութեամբ ի թիկունս կայսերն Յունաց. իսկ նոքա ոչ կոչեցին զնա և ոչ շուք եդին նմա և ոչ մեծարանս։ Իսկ թագաւորն Պարսից Տապուհ յղէր առ նա (առ Արշակ) հրեշտակս խաղաղութեան, յուշ առնէր նմա զառաջին երդումն. ասելով, եթէ Կամ լիցի եղբօր, զի եկեսցես օգնեսցես ի գործ պատերազմիս, ի թիկունս հասցես քո գնդաւդ. թէ դու ի մեր կոյս լինիս՝ գիտեմք զի մեր լինելոց է յաղթութիւնն։ Ապա յորժամ զայս լսէր Արշակ արքայ Հայոց՝ մեծաւ ուրախութեամբ կամեցաւ երթալ ի թիկունս օգնականութեան, զօրավիգն լինել Տապհոյ թագաւորին Պարսից։ Տայր հրաման Վասակայ իւրում սպարապետին պատրաստել զօրս կուռ վառեալս, որ ընտիրք և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստագ նահատակութեանն, նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք անվրէպք կորովիք, վաղրաւորք, սակրաւորք, որք ոչ գիտէին զերկիւղ զանգիտելոյ յարանց ախոյանաց, համակ հեծելազօր զրահաւորք, պատենազէնք, սաղա-

ւարտաւորք, դրօշաւորք, կազմ նշանաւորք, բազմաձայն փողարօքն. խաղաց գնաց թագաւորն Արշակ բազմակոյտ նախարարօքն, չուեաց ընդ Աղձնիս ընդ իւր իշխանութիւնն. չոգաւ թափեցաւ յերկիրն Արուաստանի դէմ յանդիման Մծբնացւոց քաղաքին։ Զօրքն Յունաց մածեալ բանակեալք էին. իսկ զօրքն Պարսից չեւ էին հասեալ։ Բայց զօրքն արքային Հայոց կանուխ քան զՊարսսն ի տեղի ճակատուն հասանէին և զտեղի առեալ կալին։ Ապա տապել սկսան զօրքն Հայոց ընդ իւրեանց նիստ խափանածոյն, և ոչ առնուլին յանձն մնալ կամ անսալ զօրացն Պարսից, այլ կամեցան յարձակել դիմել հասանել ի վերայ զօրացն Յունաց, ինքեանք առանց Պարսից զօրացն անձամբ վճարել զգործ պատերազմին։ Եւ այր ամենայն զօրացն Հայոց ինքնակամք իւրաքանչիւր արձակ արձակ խաղային. ևս առաւել զօրավարն նոցին Վասակ քան զամենայն զօրսն ելևել առնէր, կապակոտր լինէր, չմնայր հաւանութեան՝ մինչև զօրքն Պարսից եկեսցեն։ Ապա միահամուռ զօրքն Հայոց անկանէին առաջի և խնդրէին յիւրեանց թագաւորէն Արշակայ, զի մի պահեսցէ զնոսա մինչև եկեսցէ արքայն Պարսից Շապուհ, այլ վաղագոյն նոցա զպատերազմն յանդիման արարեալ համարձակեսցէ յարձակել։ Ապա թոյլ տայր նոցա թագաւորն Արշակ, և յանդիմանէր նոցա զգործ պատերազմին։ Յայնժամ կարգէր կազմէր պատրաստէր զամենայն զօրսն Հայոց Վասակ զօրավարն սպարապետն Հայոց Մեծաց։ Վառէր զինէր, ժամակալ լինէր Վասակ, հանդերձ ամենայն պատերազմող զօրօքն Այրարատեան գնդաւն ելանէր անկանէր ի վերայ բանակին։ Ընդ սուր հանեալ կոտորէին, և առնէին զկապուտ զաւար յունական զօրուն։ Յետ այսորիկ զտեղի ունէր արքայն Հայոց հանդերձ իւրովք զօրօքն, մինչև գայր հասանէր Շապուհ արքայն Պարսից։ Իբրև եկն ետես զքաջութիւն գործոյն հայաստան զօրացն, զի զճակատ մղեալ, զպատերազմ յարդարեալ, զյաղթութիւն կազմեալ և զգործ վճարեալ էր՝ կայր զարմացեալ մեծապէս, և պատուէր զԱրշակ արքայ Հայոց մեծապէս և զամենայն մեծամեծս Հայոց, սոյնպէս և զսպարապետն Հայոց զՎասակ։ Ապա խօսել սկսանէր թագաւորն Պարսից Շապուհ ընդ զօրս իւր, թէ Զի՞նչ պարգևս բարեաց կամ զի՞նչ հատուցումն կարեմք մեք հատուցանել արքայիս Հայոց Արշակայ, զի զայսպիսի գործ գործեաց, կամ զայսպիսի քաջութիւն արարեալ, կամ զայսպիսի թշնամիս եհար և զայսպիսի պատերազմ մղեաց, կամ այսպիսի ճակատու յաղթեաց և զայսպիսի անուն ստացաւ մեզ։ Զի եթէ մեք լեալ էաք, ամենայն Արեաց զօրօք հանդերձ՝ այսպիսի աջողութիւն չգայր ի ձեռն. քաջ թէ զոյգ հաւասարակ այսպիսի գործ

ի միասին կարէաք գործել. արդ Հայոց արքայ իւրով զօրութեամբն ընդ մեր նահատակեալ զայսպիսի քաջութիւն արար՝ զոր ոչ ոք կարէ առնել ամենեւին։ Արդ զո՞րպիսի հատուցումն բարեաց կարասցուք մեք առնել նմա։ Ապա տային պատասխանի նախարարքն իւր և ասեն ցնա, թէ Զի՞նչ և կամիս, ի՞ւ կամիս՝ կարող ես հաճել զնա. ոսկի քո շատ և արծաթ, կերպաս և մարգարիտ. զի՞նչ և միանգամ դու կամիս շնորհել նմա՝ տուր նմա։ Ապա տայր պատասխանի Շապուհ թագաւորն Պարսից իւրոց իշխանացն և ասէ. Ոչ եթէ սէր ինչ է զոր դուքդ ասացէք. այլ եկայք անքակ սէր արասցուք մեք ընդ Արշակայ արքային Հայոց, զի մինչև յաւիտեան անբաժին լիցի նա ի մէնջ։ Տացեմ զդուստր իմ կնութիւն Արշակայ արքայի· Հայոց, և տաց նմա տուն մեծ, զի յորժամ գնասցէ ի Հայոց գալ առ մեզ՝ այնպէս տացուք նմա տուն մեծ, զի ի Հայոց մինչև ի Տիզբոն մինչև առ մեզ համակ յիւրում տան ագցի, մինչև առ մեզ եկեսցէ։ Թագաւորին զայս արասցուք. իսկ զօրավարին Վասակայ կամ այլոց մեծամեծացն և զօրավարացն տացուք ոսկի և արծաթ, կերպաս և մարգարիտ։ Եւ հաճեցան մեծամեծքն և խորհրդակիցք թագաւորին Պարսից ընդ այս խորհուրդ, և հաստատէին զասացեալսն, թէ արժան է զայդ առնել։ Իսկ թագաւորն Պարսից Շապուհ մեծաւ ստիպով ստիպէր զթագաւորն Հայոց զԱրշակ, զի առցէ գնասցէ զնա ընդ ինքեան յԱսորեստան, զի անդ մեծափառ պատուով և փեսայութեամբ մեծարեսցէ զնա։ Իսկ Արշակ և ամենայն զօրք իւր տաղտապէին երթալ զհեռի ճանապարհն. զի ամենայն ոք յանձնիւր տուն, յիւրաքանչիւր տեղի զօրէն բարուց հայաստան մարդկան անձկացեալ էին։ Եւ եղև իբրև ի վերայ հասանէր իրացն Անդովկ նահապետն Սիւնեաց գաւառին, եթէ Շապուհ կամի տալ զդուստր իւր կնութիւն Արշակայ՝ մեծապէս երկեաւ, և բախեցաւ նորա կասկած մտացն։ Զի եդ ի մտի իւրում, թէ յորժամ առցէ Արշակ կին իւր զդուստր թագաւորին Պարսից՝ յայտ է այնուհետև թէ անարգի դուստր նորա. վասն զի Փառանձեմ դուստր Անդովկայ որ էր կին լեալ Գնելոյ՝ ի ժամանակի անդ էր կին Արշակայ։ Անկանէր այնուհետև Անդովկ ի հընարս և ի ծուփս խորհրդոց, գտանել պատճառ՝ զի ո՛ գիտէ կարասցէ ցրուել զսէրն մեծ որ էր անկեալ ի մէջ թագաւորացն երկոցունց։ Նախ բազում ոսկի զօրավարին Հայոց Վասակայ Անդովկն մատուցանէր. սոյնպէս և զամենայն մեծամեծսն կաշառէր, զի հընարեսցի քակել զմեծ սէրն որ ի մէջ թագաւորացն երկոցունց։ Եւ ամենայն մեծամեծքն ձեռն յանձին հարկանէին, առեալ ուկւոյն կաշառօք խաւարեցան։ Ապա զմի ոմն յաւագաց թագաւորին

Պարսից ի ներքին ի բուն խորհրդականացն ի բանի իւրում առնէր Անդովկ, զի բանս արկցէ ընդ Թագաւորն Պարսից ընդ Շապուհ և ընդ Արշակ։ Եւ տայր նմա Անդովկ ոսկի բազում, և դնէր բանս ի բերան, զի իբրև կերպարանս գուշակի արասցէ ասել ցարքայ Արշակ, թէ Ապրեցո զանձն քո, զի ճշգրիտ խորհեալ է Թագաւորին Պարսից ունել զքեզ և սպանանել։ Եւ յորժամ դու զայս ասասցես՝ ասէ, և զմեզ հրամայեսջիր կոչել ի խորհուրդն, և զքո բանս աւագանին հաստատեսն։ Ապա գայր մտանէր խորհրդակից արքային Պարսից առ արքայն Հայոց. խօսել սկսանէր ընդ նմա զբանս ի բերան եդեալ Անդուկայն չարագործի և ասէր, թէ Արքայդ Հայոց Արշակ, ապրեցո զանձն քո, զի խորհուրդ խորհեալ է Թագաւորին Պարսից Շապհոյ ունել զքեզ և սպանանել։ Կայր հիացեալ և զարմացեալ արքայն Արշակ ընդ բանսն ընդ այնոսիկ և ասէ. Ի մեծի վաստակոցն իմոց ի վերայ այս հատուցումն ի նոցանէն։ Ապա հրաման տայր կոչել զառաջեաւ իւրով արքայ Արշակ զամենայն զմեծամեծս իւր և զամենայն խորհրդակիցս իւր, զՎասակ սպարապետն և զԱնդովկ զաներն իւր, և որ միանգամ էին նախարարքն, և պատմէր նոցա զոր միանգամ լուաւ ինքն ի պարսկէ անտի։ Ապա և նոքա ընդ մի բերան ասէին նմա, թէ Մեք զայդ վաղ լուաք, ցքեզ չիշխեցաք ասել. այլ իրքդ այդ հաստատ են։ Բայց արդ, արքայ, գիտեա, տես, զիա՛րդ ապրեցուսցես զանձն քո և զմեզ։ Ապա արքայ Արշակ բազում պարգևս գանձուց ոսկւոյ և արծաթոյ տայր պարսկին այնմիկ որ ասաց նմա զբանս զայսոսիկ։ Եւ ինքեանք կազմեցան պատրաստեցան. խորհուրդ խորհեցաւ Արշակ Թագաւորն Հայոց, և յառնէին ի գիշերի որ միանգամ մարդ էր ի բանակին Հայոց, հեծան ի ձիս և փախեան։ Եւ առ ետեղ թողին զխորանս և զվրանս, զկահ և զկարասի և զկազմած իւրեանց և զբանակն իւրեանց, և գնացին գաղտուկ, և ոչ ոք ի բանակէն Պարսից գիտացին զայն մինչ ցայգ ցառաւօտն։ Եւ իբրև եղև ժամ այգորելի առ Թագաւորն Պարսից, և ամենայն Թագաւորք և իշխանք մեծամեծք իւր այգորեալ գային արքային Պարսից՝ բայց միայն ոչ ուրեք ի մէջ երևէր Թագաւորն Հայոց Արշակ հանդերձ իւրովք մեծամեծօքն։ Ապա տայր հրաման Շապուհ Թագաւորն Պարսից իւրոցն՝ երթալ տեսանել, թէ զինչ իրք իցեն ի բանակին Հայոց Թագաւորին Արշակայ, զի այնչափ ժամս յամեաց գալ յայգորել Թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապա երթեալ տեսանէին, զի թափուր կայր բանակն առանց մարդոյ. զի թողեալ էր իւրեանց զխորանս և զվրանս և զհովանոցս և զարահակս և զգահոյս և զանկողինս և զկահ և զկազմածս և զկարասի իւրեանց, և

զգանձս իւրեանց անգամ. բայց միայն զզէնս իւրեանց զոր բարձեալ էին ընդ ինքեանս և գնացեալք։ Եւ որ չոգան ի բանակն՝ գային զամենայն պատմէին Շապհոյ արքային Պարսից։ Եւ իբրև լուաւ Շապուհ, քանզի այր իմաստուն էր, գիտացեալ ի կործիս իմաստութեան իւրոյ զիրսն որ ինչ եղևն՝ անդէն ասաց, թէ Այն փախուստ թագաւորին Հայոց լիմոց աստի եղեալ է. զի ի մէնջ, ի դրանէ աստի էին, աւէ, որք փախուցին զայրն զայն զԱրշակ։ Ապա յիւրոց աւագացն ի մեծամեծացն դեսպան ձիով զբազումս յղէր զհետ թագաւորին Հայոց. հանդերձ երդմամբ ի սէր միաբանութեան և յանդիմանութեան, զի դարձցին և զչարախօսութեան զքանս ի մէջ անեալ կշտամբիցեն։ Եւ ոչ կամեցաւ արքայն Հայոց ունկնդիր լինել բանիցն պատգամաւորացն թագաւորին Պարսից Շապհոյ, և ոչ դարձաւ այլ անդէն յերկիրն Պարսից։ Ապա յայնմ օրէ հետէ և անդր յուզեցաւ պատերազմ գրգռութեան մարտից ճակատուց ի մէջ թագաւորին Հայոց Արշակայ և ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ (Բուզ. Դ. Ի.)։

**23.** Արդէն տեսանք Ամմիանոսէ, թէ ինչպէս Ուրսիկինոս և ինքն իսկ Ամմիանոս որ գործակից և խորհրդակից էր նմա, տեսնելով Պարսից արագ արշաւանքն՝ թողին զՄծբին զոր ամրացունելու մտօք եկած էին, և ապաւինեցան յԱմիդ։ Ուստի չէ ամենևին անհաւանական, թէ Արշակ ստիպեալ ի թախանձանաց Շապհոյ, տեսնելով ևս ցրտութիւն ի կողմանէ Հռոմայեցւոց՝ այս վերջիններուն շփոթ ժամանակը տարաւ այն նշանաւոր յաղթութիւնն հռոմէական անկարգ և անգլուխ զօրաբաժնի մը դէմ առ Մծբնաւ. բայց թելադրութեամբ նախարարաց, որ միշտ տժգոհ էին Արշակայ մօտենալէն առ Շապուհ, ընդ որոյ բարեկամութիւնն չէին վստահ, և մանաւանդ հնարիւք Անդովկայ աներոյն իւրոյ, որ վըտանգ ևս կը տեսնէր վասն դստեր իւրոյ, եթէ խնամենար Արշակ ընդ Շապհոյ՝ կասկածելով հեռացաւ բանի նիզակակցութենէ խորամանկ Պարսկին։ Արշակայ այս կարճ միտումն ի Շապուհ չէ բնաւ հակառակ պատմութեան Ամմիանու, թէ Արշակ եկաց միշտ հաւատարիմ առ Հռոմայեցիս։ Այս ճշմարիտ է յետ այս առաջին անգամուն ըստ նորին իսկ Բուզանդայ (Դ. ԻԱ.)։

Շապուհ անշուշտ գնելով ի մտի հանել ի դէպ ժամու, ըստ մտաց նորա, Արշակայ այս վտարանջութեան ոխը՝ կը մղէ յառաջ զչուն դէպ յԵփրատ։ Չճանապարհայն կ'առնուին բերդք ինչ, ինչպէս նաև մեծ և կարևոր քաղաքն Ամիդ յետ եօթանասունևերեքօրեայ պաշարման, զոր մանր կը նկարագրէ Ամմիանոս իբրև ականատես, քանզի էր ի քաղաքին, և հազիւ զերծաւ մեծ դժուարու-

Թեամբ և վտանգաւ։ Նոյն տարին ի վերջ կոյս աշնան կը մեկնի Նապուհ՝ մեծ աւարաւ և բազմութեամբ գերեաց։ Յաջորդ ամին (360) դարձեալ կը յարձակի, և կ'առնուին ուրիշ երևելի քաղաքներ, ինչպէս Սինգարա, Բեծաւդէս և այլք. անհնարին էր աւերն։ Նապհոյ արշաւանաց և Ամդայ առման լուրն առնլով Կոստանդ՝ կու գայ ի Կոստանդնուպոլիս, «զի կացեալ անդ, ասէ Ամմիանոս, իբրև առ սեամս արևելից՝ դիւրին իցէ նմա խորհել դարմանս աղետիցն Ամդայ և լինել զօրաժողով առ ի դիմակալ լինելոյ գոնեայ հաւասար զօրութեամբ Թագաւորին Պարսից, զի եթէ ոչ երկնից հասեալ էր մեզ յօգնութիւն նոր իմն յաջողութեամբ՝ Նապուհ առանց երկբայութեան մղէր զպատերազմն ի Միջագետս և անդր ևս։ Արդարև նոր արշաւան ի կողմանէ Պարսից էր մօտալուտ»։ «Այս ամենայն անք անցին, ասէ նոյն պատմագիր, ի միում ամի ի մէջ Տիգրիսի և Եփրատայ։ Կոստանդ որ ի Կոստանդնուպոլիս ուր նստէր, տեղեկանայր ամենայնի մանր ի ձեռն սուրհանդակաց որ ստէպ երթային և գային՝ տեսանէր եթէ Պարսիկք արշաւելոց էին ի մօտոյ անդր իսկ քան զԵփրատ, փոյթ յանձին ունէր ամենայն հնարիւք որչափ ի կարի իւրում էր՝ զդէմ ունել նոցա։ Գումարէր զէնս, զօրաժողով լինէր, կոչէր զլեգէոնս իւր յարանց մանկագունից, որ զօրեղք էին և հմուտք պատերազմաց արևելից։ Ջանայր ևս առնել իւր թիկունս օգնականութեան բարեկամութեամբ կամ շահու զՍկիւթացիս, առ ի լինելոյ անկասկած ի Թրակացւոց անտի, յորժամ թողուցու զնոսա ի գարնան երթալ ի բուն տեղի անդր պատերազմին։.. Զայնու ժամանակաւ Կոստանդ (որ էր ի Կեսարիա Կապադովկացւոց) կոչէր առ ինքն զԱրշակ արքայ Հայոց, և յետ ընդունելոյ զնա մեծաւ պատուով, բազում և ազգի ազգի բանս հաւանութեան ի գործ արկանէր հաճեցուցանել զնա՝ կալ մնալ բարեկամ և հաւատարիմ Հռոմայեցւոց։ Քանզի լսէր,—կը յաւելու Ամմիանոս համաձայն Բուզանդայ—եթէ արքայն Պարսից փորձէր յաճախ զԱրշակ խաբանօք և սպառնալեօք և նենգութեամբ՝ ի բաց կալ ի բարեկամութենէն առ Հռոմայեցիս և կապել պնդով ընդ նմա։ Արշակ երդնոյր ստէպ՝ յանձն առնուլ մեռանել մանաւանդ քան փոխել զմիտսն, և դառնայր մեծապարգև մեծարեալ ինքն և նախարարք զորս ածեալ էր ընդ իւր, և ոչ համարձակէր առյապա դրժել երդմանցն. էր իսկ գտեալ ի Կոստանդայ բազում բարիս, մեծ քան զամենայն այն իսկ, զի տուեալ էր նմա Կոստանդ կին զՈղիմպիադա զդուստր Աբղաբիոսի անձնապահապետի, զխօսեալն եղբօր նորա Կոստասայ» (Ամմ. Ի. 11)։ Յետ մեկնելոյն Արշակայ, Կոստանդ կ'երթայ յՈւռհա, անցնելով զԵփրատ, և անտի

յԱմիդ, որոյ աւերակները տեսնելով՝ «յարտասուս հարաւ, կասէ Ամմիանոս, զմտաւ ածեալ զաղէտսն զոր կրեալ էր քաղաքն այն արժանի ողբոց»։ Յետոյ գնաց պաշարել զԲեծաւդէս. բայց չկրնալով առնուլ՝ դարձաւ յԱսորիս և եկաւ յԱնտիոք։ Պատրաստութիւնք արտաքին և ներքին պատերազմին յառաջ կը տարուէին ստիպաւ (քանզի Կոստանդ ունէր նաև պատերազմ ընդ Յուլիանու, որ թեկն ածէր կայսրութեան)։ Թագաւորն Պարսից մեկնած էր ակամայ ձմերան սաստկութեան պատճառաւ, և երկիւղ էր, թէ գարնան յարձակէր միւսանգամ աւելի մեծ զօրութեամբ։ Ուստի Կոստանդ ղրկեց պատգամաւորներ այլևայլ քաղաքներու և նախարարներու՝ խնդրել օգնութիւն կամ գէթ յորդորել զնոսա մնալ չէզոք, ջանաց մանաւանդ շահել պարգևօք և մեծագին հանդերձներով զԱրշակ և զՄիհրան, մին Հայոց և միւսն Վրաց թագաւոր, որոց յետս կալն կարէր բերել մահացու հարուած կայսրութեան, և ինքն անցնելով զԵփրատ՝ գնաց միւսանգամ յՈւռհա հանդերձ զօրօք։ Շապուհ անցնելու համար զՏիգրիս ոչ այլ իմիք կ՚սպասէր՝ բայց յաջող պատասխանւոյ հմայից, և եթէ տրուէր նմա անցք ընդ Տիգրիս՝ կարող էր յառաջ խաղալ մինչև յԵփրատ։

**24.** Մինչ Կոստանդ կը պատրաստուէր բոլոր զօրութեամբ բռնելով պաշտպանողական դիրք չտալ թշնամւոյն ազատ մուտ՝ լսեց յանկարծ, թէ Շապուհ հակառակ գտնելով զհմայս՝ դարձած էր զօրօք յետս։ Կոստանդ ազատելով առ ժամն այս երկիւղէն՝ պատահելու համար ամբողջ բանակաւն, բաց ի Միջագետաց զօրուէն, իւր ներքին թշնամւոյն Յուլիանու՝ դարձաւ յԱնտիոք, և մինչ կը փութար անտի խաղալ յառաջ՝ մեռաւ ջերմամբ ի Կիլիկիա մօտ ի Տարսոն (361)։ Յուլիանոս կ՚առնու կայսրութիւնը (361—363)։ Ինչպէս ամէն կողմերէ՝ նոյնպէս ի Հայոց կու գան պատգամաւորք յողջոյն նոր կայսեր և կը խնդրեն նորոգել զդաշն նիզակակցութեան։ «Սակայն համբաւն, ասէ Ամմիանոս, հռչակէր առ օտարս զքաջութիւն նորա, զժուժկալութիւնն, զարութիւնսն ի պատերազմի. և առ սակաւ սակաւ անուն նորա որ զարթուցանէր զյիշատակս ամենայն առաքինութեանց՝ ընթանայր ընդ աշխարհ ամենայն։ Եկին ի խօսել հաշտութիւն ընդ նմա ի Հայոց և յայլոց աշխարհաց որ յայնկոյս Տիգրիս գետոյ» (Ամմ. ԻԲ. 7)։ Յուլիանու գլխաւոր խորհուրդն էր յառաջ տանել պարսկական պատերազմն, «յորմէ մարթ էր նմա զերծանել, ասէ Ռիդդէր, պատուաւոր իմն դաշամբ զոր առաջի արկանէր նմա Շապուհ. բայց ամբարտաւանութիւն և ունայնութիւն նորա դարձուցին զայն պատեհ առիթ յարշաւանս անմիտ վրէժխնդրութեան։ Որպէս այլ ամենայն սմին

նման փորձք՝ նոյնպէս և այս յանգէր ի մեծ տկարութիւն հռոմէական զօրութեան առ Յովիանու» (Րիդդէր, Երկրագր. հտ. Ի. էջ 131)։ Զարշաւանն Յուլիանու, որպէս և զողորմ վախճան նորա կը համառօտենք առ այժմ ի Րիդդերայ։—Յուլիանոս ելանէ ի ճանապարհ յԱնտիոքայ յամին 363, մարտ 3, և անցնելով զԵփրատ կը հասնի ի Խառան, երկու աւուր գնաց յարևելից Ուռհայի։ Անդ ուղին կը բաժնուէր երկու. մին կ'երթար ի ձախմէ առ Տիգրիսիւ ընդ Ադիաբեն, ընդ որ կ'արձակէ Յուլիանոս զմի մասն զօրուն իբրև օժանդակ գունդ, որում բոլոր զօրութեամբ օգնել կը հրամայէ Արշակայ։ «Յուլիանոս, ասէ Ամմիանոս, առնէր բարւոք ընդունելութիւն դեսպանաց եկելոց, այլ ազնուական իմն վստահութեամբ տայր պատասխանի, եթէ վայել է Հռոմայ փութալ ի թիկունս օգնականութեան իւրոց բարեկամաց և դաշնաւորաց, յոր ժամ և պիտոյ իցէ օգնել, այլ չէ արժան նմա օտար և եկամուտ օգնութեամբ պահանջել զիւրոց զրկանաց վրէժս։ Սակայն յայտ առնէր առ Արշակ արքայ Հայոց՝ լինել պատրաստ, բազմաձեռն գնդաւ հասանել ի թիկունս զիարդ և ուր պիտոյ իցէ, ըստ հրամանին զոր տալոց էր նմա յետոյ» (Ամմ. ԻԳ. 2)։ Գաթըրճեան կու տայ մեզ պատճէն մի իբրև օրինակ թղթոյ Յուլիանու առ Արշակ, զորոյ զմիտսն ամփոփելով իմն բերէ ի մէջ և Սոզոմենոս (Եկ. պտմ. Դպր. Զ. գլ. Ա.)։ Պատճէն թղթոյն առ Խորենացւոյն (Գիրք Գ. գլ. ԺԵ.) ունի նմանութիւն միայն։ Օրինակ վերագոյն ճառելոյ սպառնալից թղթոյն է այսպիսի ինչ. «Արշակայ Հայոց նախարարի։ Փութա աճապարել իսկ և իսկ, Արշակ. վառեա զաջ քո ընդդէմ պարսկային մոլեգնութեանն։ Քանզի է մեր այնպիսի կազմութիւն պատերազմի և ուժգնութիւն ոգւոյ, զի մին յերկուց առաջի կայ մեզ. եթէ իբրք Պարթևաց յաջողեսցին՝ մեք քաջութեամբ զպատերազմն մղեալք և ամենայն զօրութեամբ ընդ թշնամւոյն մաքառեալք՝ մեռանիցիմք և զընութեանն պարտիս հատուցանիցեմք, և կամ եթէ օգնական մեզ դիքն լինիցին՝ զՊարսիկն վանեալ վկանդեալ՝ դարձցուք այսրէն յաղթութեամբ և նշան յաղթութեան ի վերայ թշնամեացն կանգնեսցուք։ Ապա զամենայն իսկ յուլութիւն ծուլութեան և զխեռութիւն ի բաց թօթափեա, և զմտաւած զԿոստանդիանոսն սքանչելի և զզօրութիւն արանցն երևելեաց, որ ի քեզ և յորս նման քեզ բարբարոսքն իցեն՝ ծախեցան ի յոյլն և ի զառամեալն Կոստանդեայ, և զիս ևս այժմ ած զմտաւ զՅուլիանոս, զքրմապետ, զկեսար, զաւգոստոս և զպաշտօնատար դիցն և Արեայ, որ Փրանկացն և խժդժից սատակիչն եղև, իսկ Գաղղիացւոցն և Իտաղիացւոց ազատիչն։ Ապ'եթէ այլ ինչ ի մտի խորհի-

ցիս, քանզի լսեմ զքէն թէ խորամանգ իմն իցես, և զօրդ չարաբարոյ և ամբարտաւան, որպէս և իրքս որ առաջի կան ցուցանեն (քանզի զթշնամի զոմն հասարակաց օգտի առ քեզ թագուցեալ պահես և ի նմին ցայժմ տեսեմ՝ դէտ ակն կալեալ ելից պատերազմին). մեզ շատ և բաւական է դիցն օգնականութիւն՝ զի զամենեսին առնիցեմք սատակաջինջ։ Այլ եթէ այլ ինչ բաշխք բախտիցն կամիցին, քանզի սոցա զօրութիւն կամք դիցն են՝ համբերութեամբ և քաջութեամբ տարայց։ Սակայն այնմ իմն գիտակ լեր՝ թէ (յայնժամ) ի հիմանց այրեալ տոչորիցի տուն քո, և քակեալ Հայոցն տէրութեան՝ եղիցես յաւելուած կամ արբանեակ պարսկական իշխանութեանն» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. 496. Ծան. 1)։ Այս թղթոյն հարազատութիւնը կասկածելի է։ Արդարև չթուիր հաւանական, թէ Յուլիանոս յԱրշակայ, զոր թագաւոր անգամ կոչել չհամարիր արժանի, այլ դոյզն ոք նախարար՝ կը խնդրէր գունդ մեծ յօգնութիւն, և ոչ կը յանձնէր նմա իւր զօրաց երևելի մասին միոյ առաջնորդութիւնը, եթէ գիտէր զնա ծոյլ, յոյլ, խեռ, բարբարոս և նենգաւոր, և զզօրս նորա չարաբարոյ և ամբարտաւան։ Յուլիանոս, թէպէտ խրոխտ՝ չէր սակայն այնչափ անմիտ, մինչև այնպիսի նախատական նամակաւ և այնպիսի փափուկ ժամանակ խրտուցանէր զԱրշակ, որում այնպէս պէտս ունէր։ Թող որ, ըստ Ամմիանու, Յուլիանոս ոչ թէ գրեց թուղթ, այլ ազդարար (monuere) Արշակայ պատրաստել գունդ ստուար և սպասել հրամանի, զոր ծանուցանելոց էր նմա յետոյ (propere cogniturus)։ Մոլեռանդ քրիստոնեաներէ ստեղծուած են ի նախատինս ուրացեալ կայսեր սմին նման ոչ սակաւ առասպելք, յորոց մին ևս այն է, թէ Յուլիանոս ի վերջին ճակատուն յորում վիրաւորեցաւ ի մահ՝ առնլով արիւնը ցանեց յերկինս ասելով. «Յաղթեցեր, Գալիլեացիդ», կամ՝ «Առ, շիջո զծարաւ քո», կամ թէ կամեցաւ նետուելով ի յորձանս լինել աներևոյթ իբրև զՀռոմուլոս։ Զայսոսիկ կը պատմեն Թէոդորետոսի և Գրիգորի Նազիանզացւոյ պէս մարդիկ։

Միւս ուղին էր յաջմէ առ Եփրատաւ, ընդ որ խաղաց ինքն Յուլիանոս բուն բանակաւ հանդերձ նաւատորմղիւն։ Երկոքին բանակք պիտի միանային առ Տիզբոնի, մայրաքաղաքին Պարսից։

**25**. Յուլիանոս հասնելով առաջի Տիզբոնի՝ զարկաւ ցրուեց պարսկական բանակը, բայց դժուարութիւնն էր առնուլ մայրաքաղաքն, ամուր դրիւն և պատրաստութեամբ։ Շապուհ կ'առաջարկէ հաշտութիւն. Յուլիանոս կը մերժէ, և կարծելով յաղթութիւնն արդէն ստացած՝ կու տայ այրել նաւատորմիղը։ Սակայն նոր պարսկական բանակ կը մօտենար ընդ հրամանատարութեամբ Շապհոյ։

Յուլիանոս կ'ստիպուի բռնել Ադիաբենի ուղին, ընդ որ պէտի գար օժանդակ գունդն, զոր յիշեցինք վերագոյնն՝ առաջնորդութեամբ Արշակայ, բայց յապաղեց, քանզի երկպառակութիւն ինկած էր զօրավարաց մէջ, և չէին գտած օգնութիւն յԱրշակայ։ Յուլիանոս մնալով անօգնական՝ կը կրէր ստէպ ստէպ յարձակումն, մինչև պաշարեալ ամէն կողմանէ հեծելազօրուէն Պարսից՝ վարանեալ և յուսահատ կը մտնէ ի ճակատ անզրահ, և կը զարնուի շուրջ սլացող անթիւ նետերէ։ Ի մահ վիրաւորեալ կայսրը տարուեցաւ յիւր վրանն ուր մեռաւ յետ սակաւուց (363. Յուլ.), հանդարտութեամբ խօսելով զազնուութենէ հոգւոյ։ Մնացորդ բանակին մնաց երեք օր մեծ նեղութեամբ և վտանգաւ ի Տուրա առ Տիգրիսիւ ի հիւսիսոյ Տիզբոնի։

**26**. Յաջորդն Յուլիանու Յովիանոս բախտաւոր համարեցաւ զանձն՝ երբ Շապուհ շնորհեց նմա խաղաղութեամբ մեկնել մնացորդաւ զօրուն, տալով նմա ընդունել փոխանակ պատուաւորին, զոր մերժած էր նախորդ նորա՝ «զհարկաւորն, այլ զվատանուն դաշն», ըստ Եւտրոպիոսի (Ժ. 17) որ էր առաջիկայ։ Ոչ արևելեան կողմն Տիգրիսի միայն, այլ և հինգ գաւառք յայսկոյս գետոյն յարևմտից նորա, զորս հաւն Շապհոյ Ներսեհ թողած էր Հռոմայեցւոց առ Դիոկղետիանոսիւ՝ տրուեցան յետս։ Արևելեան սահման Հռոմէական պետութեան մինչև ցայնժամ ընդարձակուած էր։ Ադրիանոս անձկացոյց զայն կամաւ. այս անգամ զօրն, կամ մանաւանդ ի նեղ անկեալ կայսրն, ջանաց այնպիսի կորստեամբ ճողոպրել զանձն անհնարին տագնապէն։ Փոխանակ չորս օր անցունելու բանագնացութեամբ ի Տուրա, ուր հարկ էր սպառել պաշարեն սակաւ մնացորդը, եթէ քաջութեամբ յառաջ մղէր Յովիանոս զզօրն, որ 20 մղոն միայն հեռի էր Կորդուաց պտղաբեր երկրէն՝ մարթ էր նմա, հռոմէական բերդերուն ապաստան, աւելի պատուաւոր դաշինս առաջարկել։ Բայց Յովիանոս զանց առնելով զայս՝ ստիպուեցաւ տալ Պարսից զԱրզն, զՄոկս, զԾոդէս, զՀեր և Զարևանդ, և զԿորդուս (գաւառք Մեծին Հայոց որ կը թուի թէ էին յայնժամ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց), հանդերձ հնգետասան բերդիւք, թող զՍինգարա և զՄծբին որ կարևորագոյնք էին։ «Գին փրկանաց մերոց, որպէս գրեալ է ի դաշինսն, ասէ Ամմիանոս, լինելոց էր դարձուցանել ի թշնամի անդր զհնգեսին գաւառսն յայնկոյս Տիգրիս գետոյ, այն է՝ զԱրզն, զՄոկս, զԾաւդէս, զՀեր և Զարևանդ և զԿորդուս հանդերձ հնգետասան ամուր քաղաքօք, յորս յաւելան ապա Մծբին և Սինգարա, որ ամուր պատուարքն էին ի

սահմանագլուխս մեր։ Կռուել տասնապատիկ լաւ էր, քան յանձն առնուլ զմին ի պայմանաց անտի» (Ամմ. ԻԵ. 7)։

**27**. Միւս եւս գլխաւոր պայման Յովբանեան դաշանցն էր թողուլ զՀայաստան իւր բախտին, և չլինել նմա ամենևին օգնական. պայման՝ զոր ի վաղուց կը պահանջէր Շապուհ, և որ ոչ այլ ինչ էր՝ եթէ ոչ խպառ գրաւումն Մեծին Հայոց.—«Միւս եւս պայման արդարև անիրաւ, կը յարէ Ամմիանոս, յաւելաւ ի դաշինս անդր, զի Արշակայ որ միշտ բարեկամ մեր էր և հաւատարիմ՝ մի տացի այնուհետև ի մէնջ օգնութիւն ընդդէմ Պարսից։ Սովին կամէր իմն թշնամին նախ պատուհասել զայրն վասն աստատակութեանցն, զորս եդ նա ի կողմանս Պարսից հրամանաւ Յուլիանու. երկրորդ անգամ՝ զի դիւրին լիցի Շապհոյ այնուհետև արշաւել ի Հայս, որպէս և եղեն իսկ։ Զի յետ դաշանցն եղև կենդանւոյն ձերբակալն լինել Արշակայ, և ի պատճառս երկպառակութեանց որ զայնր զհետ եկին՝ կալան Պարսիկք զԱրտաշատ և գրեթէ զամենայն մասն Հայոց Մեծաց, որ սահմանակից էր Մարաց» (Ամմ. Անդ)—դէպք՝ որ բոլորովին համաձայն են պատմելոցն զՀայոց ի Բուզանդայ յետ յիշեալ դաշանց Յովիանու, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։ Հոս կը գտնենք Բուզանդայ Դ. դպրութեան ԻԱ. գլուխը, որ գեղեցիկ համառօտութիւն է մեծանուն հռոմայեցի պատմագրին, ընդ որում, ինչպէս արդէն ասացաւ՝ կարևոր կէտերու մէջ զոյգ կ'ընթանայ Բուզանդ։ «Յետ գնալոյն փախչելոյն արքային Հայոց Արշակայ ի թագաւորէն Պարսից Շապհոյ՝ լուռ լինէր թագաւորն Պարսից ի թշնամութենէ, և խօսէր համակ ողոքով և աղաչէր զԱրշակ Հայոց սիրով՝ հաշտ միաբան կալ ընդ նմա յուխտին խաղաղութեան։ Վասն զի ի մեծ վտանգ շտապի էր թագաւորն Պարսից ստէպ ստէպ յանդադար պատերազմացն ի թագաւորաց անտի Յունաց (ի Կոստանդայ և Յուլիանոսէ)։ Իսկ Արշակ արքայ Հայոց ոչինչ կամէր անսալ նմա, և ոչ հուպ ինչ լինել ի նա կամ յղել դեսպանս, և ոչինչ տալ պատարագս ընծայից, և ոչ հուպ ինչ կամ մօտ լինել ի նա բնաւին, և զանունն անգամ նոցա ոչ կամէր լսել։ Իսկ թագաւորն Պարսից ստէպ ստէպ յղէր պատարագս առ նա, առաքէր դեսպանս, և ինքն հապճեպ կռուէր ընդ թագաւորսն Յունաց։ Այլ իբրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորացն Յունաց և ի մէջ թագաւորին Պարսից Շապհոյ՝ ուխտից նամակ գրեալ և կնքեալ տայր թագաւորն Յունաց թագաւորին Պարսից։ Եւ գրեալ էր յուխտից նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, զՄծբին քաղաք որ է յԱրուեստանի, և զՄիջագետս Ասորւոց, և մէջաշխարհին Հայոց. ձեռնթափ եմ, ասէ. թէ

կարասցես յաղթել նոցա և արկանել ի ծառայութիւն՝ ես ի թիկունս ոչ եկից նոցա։ Արդ ի նեղ ուրեմն անգեալ թագաւորն Յունաց և ի նեղին վշտի զայս ձև օրինակի բանիցն կնքէր մուրհակ և տայր թագաւորին Պարսից, և ապա ճողոպրէր ի նմանէ» (Բուզ. Դ. ԻԱ.)։ «Վատթարութիւն Հռոմայեցւոցն՝ էր և պարտութիւն Հայոց թագաւորին», ասէ Գաթըրճեան։ Սակայն պարտ է գիտել, թէ ինչպէս կը հասկացուի ի բանից Ամմիանոսի՝ Յովիանու դաշանց այն մասին մէջ որ կը վերաբերէր Հայոց՝ կար պայման թողուլ զՀայս ուրոյն իշխանութիւն կամ թագաւորութիւն, առանց ջանալոյ նուաճել զայն իսպառ ընդ ձեռամբ Պարսից։ «Շապուհ արքայ Պարսից... յետ մահուն Յուլիանու և ամօթալի դաշանցն առ ժամանակ մի պահեալ զմիաբանութիւնն ընդ մեզ՝ ապա յանկարծ, որպէս թէ չէր ամենևին ընդ պարտուք, առ ոտն հարեալ զուխտն որ առ Յովիանու՝ լինէր ձեռներէց արկանել զՀայս ի սպառ ընդ իւրով իշխանութեամբ» (Ամմ. Իէ. 12)։ Ուստի Շապհոյ բռնելով զԱրշակ բանտարկելն առանց տալոյ նմա յաջորդ՝ էր դրժել այն պայմանին, ուստի և բոլոր դաշնադրութեան անուղղակի։ Վադեսի արձակելն զՊապ յերկիր իւր իբրև օրինաւոր ժառանգ, և ի հակառակելն Շապհոյ օգնելն նորա Հայոց զինուք, ինչպէս պիտի տեսնենք՝ չէր ամենևին եղծումն Յովիանեան դաշանց։

**28.** Յառաջ քան սկսանելն մեր պատմել զանցս որ անցան ի Հայս յետ դժբախտ դաշանցն Յովիանու՝ բերենք Ամմիանոսի Իէ. դպրութեան ամբողջ 12-րդ գլուխն, ուր պատմագիրն քաջ և արդարախօս կը համառօտէ Արշակայ թագաւորութեան վախճանին և Պապայ թագաւորութեան սկզբան պատմութիւնն, որ կարճ յառաջաբան է պատմելոցն ի Բուզանդայ և կ'ամբողջացունէ ինչ ինչ, զոր պակաս թողած է այս վերջինն։ Ահա պատմութիւնն Ամմիանու համառօտիւ։ Յետ Յովիանու դաշանցն, որոյ զօրութեամբ Հռոմայեցիք կը հրաժարէին ի Միջագետաց և յօգնելոյ Հայոց սա պայմանաւ, որ Հայաստան պիտի մնայր ուրոյն իշխանութիւն՝ Շապուհ կը յարձակի հակառակ այս պայմանին ի Հայս. Արշակ կը բռնուի դաւով. Շապուհ երկու արբանեկաց իւրոց, Կիւղակայ և Արտաւանայ (անուանք՝ զորս չենք գտներ առ Բուզանդայ) կը յանձնէ զիսպառ նուաճումն Հայոց. սոքա կը պաշարեն զԱրտագերս, ուր ապաւինած էր կինն Արշակայ հանդերձ որդւովն Պապաւ, բայց երկոքին արքն յանկարծ փոխուելով՝ կը բարեկամանան տիկնոջն և լինին այնուհետև նեցուկ տէրութեանն. զՊապ կը փախցունեն գաղտ առ կայսր, զորոյ օգնութիւնն կը խնդրեն։ Վաղէս առանց զինուորութեան կը ղրկէ զՊապ տիրել հայրենի երկրին։ Շապուհ զայ-

բռնալով կը դիմէ ի վերայ Պապայ, որ խոյս կու տայ ի լեռինս։ Պարսիկք յուսահատելով բռնել զՊապ՝ կ՚սկսին աւերել զերկիրն. Արտագերք և ուրիշ ամուր տեղեր կ՚առնուին, մինչև ստիպել Վաղեսի զօրօք օգնել Հայոց։ Շապուհ տեսնելով, թէ բռնութեամբ չէ կարող յաջողել՝ կը ջանայ շահել զՊապ խորամանկութեամբ, և կու տայ նմա սպանանել իւր երկու մտերիմ խորհրդատուներն, զԿիւղակ և զԱրտաւան։ Մօտ էր կործանումն Պապայ, մինչ Տերենտ և Արինթէ (ըստ Բուզանդայ՝ Ադէ) հասնելով զօրօք և թագաւորեցուցանելով զՊապ՝ կը մտնեն ի Հայս։ Տեսնենք զբուն բանս Ամմիանու. «Սակայն երկայնակեացն Շապուհ արքայ Պարսից, հանապազ մէտ ի յափշտակութիւն զոր սիրէր ի սկզբանէ անտի թագաւորութեանն, յետ մահուանն Յուլիանու և ամօթալի դաշանցն առ ժամանակ մի պահեալ զմիաբանութիւնն ընդ մեզ՝ ապա յանկարծ առ ոտն հարեալ զուխտն որ առ Յովիանու՝ լինէր ձեռներէց արկանել զՀայս իսպառ ընդ իւրով իշխանութեամբ։ Եւ զի հակառակ էր նմա ազգն այն՝ մերթ դաւով և բռնութեամբ նեղէր զերկիրն, և մերթ զնախարարսն և զմեծամեծս ջանայր արկանել ի հրապոյրս, և զայլս իբրև զհէն յանկարծ ի վերայ հասեալ նուաճէր։ Ապա հնարիւք իմն խաբէութեան և սուտ երդմամբ զինքնին զթագաւորն Արշակ հրապուրեալ ի խնջոյս՝ տայր տանել հեռի ուրեք, հանել զաչս նորա, և կապեալ ոսկի շղթայիւք—պատիւ որ ընծայի մեծամեծաց և համարի առ նոսա իբրև մխիթարութիւն ի վիշտս գերութեան—արգելոյր ի բերդ մի անուանեալ Ագաթանս, ուր չարաչար տանջեալ մեռանէր նա սրով։ Ապա զի մի ինչ պակաս իցէ ի նենգութեանն՝ յաւել երկուց փախստէից, Կիւղակայ ումեմն ներքինւոյ, որ մարդպետն լեալ էր, և Արտաւանայ զօրագլխի զօրաց յանձն առնել զՀայս, պատուէր տուեալ նոցա՝ ջանալ առնուլ և կործանել զԱրտագերս քաղաք, ամուր պարսպօքն և պահանորդօք, ուր ապաստանեալ էր կինն Արշակայ հանդերձ որդւովն։ Պաշարումն սկսաւ, այլ անմատոյց բարձրութիւն տեղւոյն և սաստկաշունչ ձմեռն՝ անհնարին զառն գործէին։ Կիւղակ իբրև ներքինի գիտէր վարել ընդ կանայս. յայս իմն ապաստան՝ հանդերձ Արտաւանաւ մատչէր ի պարիսպ անդր, և որպէս թէ պատգամս ինչ առ տիկինն ունիցի՝ անկասկած գտանէր մուտ։ Զառաջինն փորձէին արքն երկոքեան ահ արկանել տիկնոջն և պահանորդաց, յուշ արարեալ նոցա զանագորոյն բարս Շապհոյ՝ խրատ տային փութալ ունել զառաջս չարեացն անձնատուր լինելով արագ։ Այլ յետ բազում բանից, որ այնպէս սաստկութեամբ պնդէին տալ ի ձեռս զբերդն, յանկարծ խանդաղատեալ ընդ ար-

տասուս տիկնոջն վասն աղետից առնն, թերևս և բարւոյ իմիք ակն կալեալ՝ գաղտ ի բանի լինէին ընդ բերդակալսն՝ ի ժամադիր ժամու ելեալ գիշերայն յամրոցէն անկանել ի վերայ բանակին, և տուեալ երդումն՝ թողուլն զԱրտագերս, գային այսրէն ի բանակն ասել, եթէ ամրականքն խնդրեն աւուրս երկուս խորհել զինչ առնելոց իցեն, և այնպէս վստահացեալ զօրուն անկասկած ի քուն լինէին։ Այլ զմէջ գիշերաւ, մինչ խոր ի քուն էր բանակն՝ յանկարծ բանային դրունք քաղաքին, և գունդ մի ընտիր ընտիր զօրաց մեղմով իմն և անբարբառ, սուսեր ի ձեռն, մտեալ ի ղակիշն առնէին կոտորած մեծ, ոչ գտեալ ընդդիմութիւն ի Պարսից կուսէ անտի։ Այս անակնկալ հարուած և տագնապն որ զհետ այնր եկն՝ զայրացուցին զՇապուհ, որ ընդ այն մանաւանդ բրդէր ի ցասումն, զի լուաւ զփախուստ արքայորդւոյն Պապայ, որոյ գաղտ թողեալ զքաղաքն խրատու մօրն՝ եգիտ ընդունելութիւն մեծ ի Վաղեսէ, որ ցուցանէր նմա տեղի բնակութեան զՆէոկեսարիա քաղաք Պոնտացւոց, և հրաման տայր կարգել նմա ռոճիկս և ունել զնա մեծաւ շքով։ Ցայնչափ մեծարանաց կայսերն քաջալերեալ Կիւղակն և Արտաւան՝ առաքեցին հրեշտակս առ Վաղէս, խնդրել ի նմանէ զօրս յօգնականութիւն և թագաւորեցուցանել Հայոց զՊապ։ Տալ զօրս չառնոյր յանձն Վաղէս, հայեցեալ ի հանգամանս ժամանակին. սակայն տայր պատուէր Տերենտեայ զօրավարի՝ մուծանել զՊապ ի Հայս վարել զիշխանութիւն, առանց առնլոյ զանուն և զպատիւ թագաւորի, և զայս առնէր վասն այնորիկ, զի մի ձգիցէ յանձն մեղադրանս, որպէս թէ հակառակ ինչ դաշանցն գործիցէ։ Այս ամենայն անցք շարժէին յանհնարին ցասումն զՇապուհ, որ գումարեալ զօր բազում՝ սկիզբն առնէր աւերել քանդել զՀայս։ Ի մերձենալ նորա զահի հարեալ Պապայ, և զի չունէր նա ուստեք ակն օգնութեան՝ խոյս տայր հանդերձ Կիւղակաւ և Արտաւանաւ ի գըլուխս լերանց որ բաժանեն զՀայս ի Կողքացւոց։ Ամիսս հինգ կացեալ նոցա անդ յանտառախիտ և ի լեռնային վայրս՝ աշխատ արարին զթշնամիսն, որոց տեսեալ, եթէ ի զուր ծախեն զժամանակն վասն սաստկութեան ձմերայնոյն՝ այրեցին զամենայն ծառ պտղատու, եղին զօրս յամենայն բերդս զոր առին զօրութեամբ զինու և կամ դաւով, և բովանդակ զօրութեամբ իւրեանց անկան ի վերայ Արտագերից, զոր առին յետ երկուստեք ճակատուց որ սպառեցին զոյժ պահանորդացն։ Կինն Արշակայ հանդերձ ամենայն գանձիւքն անկաւ ի ձեռս նոցա։ Այս դէպք ստիպեցին զՎաղէս առաքել գունդս զօրավարութեամբ Արինթեայ՝ օգնել Հայոց, եթէ Պարսիկք նորոգեսցեն զթշնամութիւնն։ Սակայն Շապուհ, որոյ խո-

ռամանկութեանն չգոյր չափ, և որ գիտէր, եթէ օգուտ անձինն այնպէս իմն պահանջէր մտանել ի կեղծիս բարեկամութեան՝ ջանայր ի ձեռն արքանեկաց իւրոց ածել զիւրև զՊապ։ Ցանդիմանէր զնա պատրուակաւ բարեկամութեան, զի այնչափ ազատութիւն շընորհեաց Կիւղակայ և Արտաւանայ, որոց, ասէր, լեալ էր գերի, անձին պահեալ զստուեր միայն թագաւորի։ Դիւրահաւան թագաւորն անկեալ ի գաղտնի որոգայթն՝ տայր սպանանել զերկոսին արսն և յղէր զգլուխ նոցա առ Շապուհ իբրև ի նշան հպատակութեան իւրոյ։ Այս անագորոյն մահ հռչակ հարաւ վաղվաղակի ընդ ամենայն կողմանս։ Վճարեալ էր վասն Հայոց, եթէ Պարսից երկուցեալ ի գալստենէն Արինթեայ՝ չէր դադարեցուցեալ զգործ դաւաճանութեանն։ Ուստի հաճեցան խնդրել ի ձեռն հրեշտակաց՝ ըստ պայմանի դաշանցն Յովիանու չլինել միջամուխ։ Վաղէս մերժէր զպատգամն, և Տերենտիոս առաքէր երկոտասան լեգէոնս։ Շապուհ տրտունջ լինէր զերացն եղելոց, նախ՝ թէ հակառակ դաշանցն Յովիանու ձեռն արկին Հռոմայեցիք օգնական լինել Հայոց, երկրորդ անգամ՝ թէ չարարին երեսս պատգամաւորութեանն զոր առաքեաց կարգել յարդարել զիրսն. ապա համարելով զդաշինսն եղծեալս՝ կոչէր զազգս արուարձանեայս յօգնականութիւն, և պատրաստէր մտանել ի ճակատ ի հասանել գարնայնոյն, տապալել զամենայն որ ինչ առանց նորա հաւանութեան գործեալ էր»։

Զայս պատմութիւն Ամմիանոսի եթէ համեմատենք ընդ պատմութեան Բուզանդայ՝ կը գտնենք արդարև տարբերութիւններ, կամ մանաւանդ պակաս, քանզի Պապայ յունական զօրօք թագաւորելուն նախընթաց դէպք, զորս յիշեցինք արդ Ամմիանոսէ՝ մեծաւ մասամբ չկան առ Բուզանդայ. և այսր պատճառ այն է, որ Բուզանդ թողլով Պապայ պատմութեան սկզբան պարագաներն՝ կ'առնու զպատմութիւն իւր Պապայ Հայաստան մտնելէն Հռոմայեցի զօրօք առաջնորդութեամբ Տերենտի և Արինթեայ զօրավարաց Վաղեսի։ Այսպէս Բուզանդայ պատմութիւնն զՊապայ կ'սկսի այս պատմագրին Ե. դպրութեան առաջին գլխէն, ինչպէս պիտի տեսնենք։ Գանք այժմ մեր պատմութեան կարգին, այսինքն առ այնս որ դիպեցան ի Հայս առ Արշակաւ յետ դաշանցն Յովիանու։

**29.** Յովիանոս մեռաւ դաշնադրութեան յաջորդ տարին (364), և Վաղենտիանոս (364—375) առնլով զկայսրութիւնն՝ իսկ և իսկ ընտրեց իւր օգնական զեղբայր իւր զՎաղէս (364—379), տալով նմա զարևելս, մինչ ինքն առաւ զարևմուտս։ Թէպէտ Հռոմայեցիք (իմա Յովիանոս) ի նեղ անկեալ թողին զՀայս իւրեանց բախտին՝ Հայք չթողին զնոսա։ Ուստի ըստ պատմութեան Բուզանդայ,

ձև է հաւանական, Հայք պատշաճ գտեցան ղրկել պատգամաւորութիւն առ Նորապսակ կայսրն։ Թէ Հայք ինչ մտօք ղրկեցին զայս պատգամաւորութիւն՝ չէ մեզ ստուգիւ յայտ. սակայն էր այն՝ ազգ ինչ բողոքոյ առ Հռոմէական ազգն, թէ ինչ իրաւամբ թողին Հռոմայեցիք ի վաղուց դաշնակից ազգ մի հաճոյից բարբարոս Թշնամւոյն. ուստի և, ասէ պատմութիւնն, պատգամաւորութեան առաջին նպատակն էր յիշեցունել կայսեր զհին դաշնակցութիւն ազգին, և թէ հռոմէական ժողովրդեան նուիրական պարտքն էր օգնել Հայոց գէթ ի մեծ կարօտութեան։ Պատգամաւորութեան նուիրական բնութիւնն առաւել ևս յայտնի է, որ այս անգամ ազգին հոգևոր գլուխն ընտրեցաւ գլուխ և առաջնորդ այն պատգամաւորութեան, այն է մեծն Ներսէս, որ կը թուի դիտմամբ յանձն առած անձամբ երթալ պատգամաւոր հանդերձ երևելի նախարարօք ոմամբք։ Նախարարք զորոց անուանսն կու տայ Բուզանդ՝ դարձան արդարև ոչ անյոյս ի Հայս, բայց առանց Ներսիսի.—«Ապա վասն խաղաղութեան ուխտին միաբանութեան դաշինն որ էր աշխարհին Հայոց ընդ կայսերն Յունաց՝ դէպ եղև առաքել անդր կազմութեամբ մեծաւ արքային Հայոց ինքնին զմեծ կաթողիկոսն Հայոց զՆերսէս, և ի մեծամեծացն Հայոց սատրապս տասն, զի երթիցեն և ի մէջ կայսերն և ի մէջ իւրեանց զուխտն հաւանութեան և խաղաղութեան նորոգեսցեն։ Ապա չոգան գնացին հասին ի կայսերական պաղատն Թագաւորացն Յունաց։... Այսոքիկ են իշխանքն որք չոգան ի Թագաւորէն մեծէ յԱրշակայ ի Հայոց աշխարհէն առ կայսրն Յունաց առ Վաղէս։ Ինքնին մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, և մեծ նահապետն Մամիկոնեան տոհմին Վահան, եղբայր մեծի սպարապետին Հայոց, և ընդ նմա Մեկեն նահապետն Ռշտունեաց և Մեհառ նահապետն Անձևացեաց, Գարջոյլ Մաղխազ նահապետն Խորխոռունեաց, և Դեմետ նահապետն Գնթունեաց, և Կիշկէն նահապետն Բագէնից, և Սուրիկ նահապետն Հրսիձորոյ, և Վրկէն նահապետն Հաբուժենից։ Սոքա չոգան ի սէր միաբանութեան առ կայսրն Վաղէս, որ արգել աքսորեաց զմեծ քահանայապետն Ներսէս» (Բուզ. Դ. Ե, ԺԱ.)։

Ասացաք «առանց Ներսիսի»։ Վաղէս էր արիանոս, և կը հալածէր ուղղափառ կոչուած, այն է Նիկիական հաւատոյն կողման եպիսկոպոսներն, նա և աքսորեաց իսկ (366) Կոստանդնուպոլսոյ արիանոս եպիսկոպոսին հետ չմիաբանող եպիսկոպոսներ։ Զէ անհաւանական, թէ և Ներսէս, որ իբրև պատգամաւոր կը գտնուէր յարևմուտս, թերևս ի Կոստանդնուպոլիս՝ աքսորուեցաւ այն եպիսկոպոսաց հետ։ Ըստ Բուզանդայ՝ որպէս թէ կայսեր միամօր որդին.

միայն ժառանգ թագաւորութեանն էր հիւանդ, և կայսրն որ ի սկզբան պատուով ընկալեալ զՆերսէս՝ խնդրեց ի նմանէ բժշկել զորդին աղօթիւք, և Ներսէս իմացունելով նմա, թէ Քրիստոս կարող էր բժշկել զորդին, եթէ կայսրն դառնայր յուղղափառութիւն՝ տուեալ նմա հնգետասան օր ժամանակ։ Կայսրն բարկանալով կը մերժէ զՆերսէս, և պայմանեալ օրը կը մեռնի պատանին։ Ներսէս կու տայ նմա յոյս, թէ պիտի յառնէր որդին, եթէ գայր կայսրն յուղիղ հաւատս։ Վաղէս առաւել ևս զայրանալով՝ կը հրամայէ կորուսանել զՆերսէս, և մեծամեծքն հազիւ կ'ազատեն զնա, որ կ'աքսորուի հանդերձ այլովք ի կղզի մի ամայի, ուր հրաշիւք կը կերակրէ Ներսէս իւրովքն, մինչև զկնի մահու կայսերն կ'արձակուի և կը դառնայ ի Հայս.—«Զայնու ժամանակաւ թագաւորն մեծ Յունաց Վաղէս ի խոտորութեան հերետիկոսութեան Արիանոսաց էր։ Իբրև ետես զնոսա (զպատգամաւորսն Հայոց)՝ զառաջինն մեծաւ շքով մեծարեաց զնոսա։ Ապա դէպ եղև, զի որդի միամօր կայսերն, այն իսկ գտանէր նորա զաւակ, անկեալ դնէր յախտ սաստիկ հիւանդութեան։ Թագաւորն վասն աղօթս առնելոյ ի վերայ մանկանն ստիպէր զսուրբ կաթողիկոսն Հայոց զՆերսէս։ Իսկ նա ասէ. Եթէ հաւատասցես թէ տէր մեր Յիսուս Քրիստոս որդի է և ծնունդ Աստուծոյ միածին յիսկութենէ Հօր, և ոչ արարած՝... լինիմ երաշխաւոր զի զմանուկն ողջ անարատ առաջի քո կալայց։ Եւ զայն յաւել, եթէ յօլէ յայնմանէ մինչև յաւուրս հնգետասան անսացեալ քեզ. եթէ ոչ եկեսցես յուղիղ հաւատս՝ յետ լնլոյ եդեալ կիտին մեռցի մանուկն։ Իբրև լսէր թագաւորն զայս ամենայն՝ լուռ եւեթ կայր, զոտն զոտամբ արկեալ, արմուկն ի ծունգ, և ձեռն ի ծնօտի։ Ապա մեծապէս ի ցասումն բրդեալ՝ տայ հրաման երկաթի կապանօք կապել զսուրբ եպիսկոպոսապետն և արկանել ի փիւղակէ, մինչև տեսեալ ուշ ունիցի մանկանն, եթէ կեցցէ թէ ոչ։.. Ի լնուլ աւուրցն հնգետասանից սատակեցաւ որդի կայսերն։ Իբրև ելաց և կոծեցաւ՝ ետ հրաման, և ածին առաջի իւր զսուրբն Ներսէս։ Մօտ առ ինքն կոչեալ հարցանէր, եթէ ի ձէնջ եղև մանկանն մեռանել։ Իսկ նա ետ պատասխանի և ասէ. Հնգետասան օր երկարեաց Քրիստոս, թերևս դարձջիք. և այժմ եթէ հաւատասցես՝ կարող է որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս յարուցանել զնա։ Զայրացեալ ընդ բանսն թագաւորն՝ կամեցաւ զնա չարամահ առնել. ապա մատուցեալ առ թագաւորն աւագք դրանն՝... հազիւ հազիւ կարացին ի հաւան ածել զթագաւորն, և արկին յայն չափս, զի աքսորեսցի միայն։ Զի ասէին. Ոչ երբէք ուրեք եղեալ է, ոչ ի մէջ թշնամեաց և ոչ ի մէջ պատերազմի՝ թարմատար հրեշտա-

կաց ինչ կալ և կապ, թող թէ մահ. և սա այր մեծ է և աւագ, և աշխարհի մերոյ գլուխ... Անսաց նոցա թագաւորն, և հրաման ետ աքսորել զերանելին Ներսէս ի կղզի մի մեծ ովկիանու ահագին ծովուն, յանապատ յանջուր տեղի մի, ուր ոչ բոյս ինչ դալար և ոչ արմատ ինչ, և ոչ այլ ինչ ամենևին որ ինչ ի պէտս մարդկան լինիցի, բայց միայն քար և աւազ ապառաժ, և ոչ ճանապարհ ուրեք ընդ այն, և ոչ գնացք ինչ նաւաց։ Էին ընդ նմա արք եւթանասուն, և յիւրոցն երկու, անուն միոյն Ռաստոմ սարկաւագ, և երկրորդին՝ Տիրանամ։ Որ տկարագոյնքն էին ի նոսա՝ սկսան նքողել ծարաւել նուաղել և ներգևել դորսովել ի քաղցոյ և ի ծարաւոյ... Եւ ասէ Ներսէս. Դիք ծունր ամենեքեան։ Եւ ի դնել նոցա երիցս անգամ ծունր և կալ յաղօթս՝ յարեաւ ի ծովու անդ հողմ սաստիկ յոյժ, և սկսաւ ընկենուլ ի կղզի անդր ձուկն սաստիկ, մինչև շեղջս շեղջս կուտէր ի ցամաքի կղզւոյն, և ընդ նմին փայտ սաստիկ յոյժ։ Իբրև հանին կուտեցին զփայտն՝ խորհէին թէ հուր պիտոյ է. յանկարծակի ինքնին լուցեալ փայտն հրով վառէր, և յորուցեալք յետ զաղօթսն կատարելոյ մատեան արկին ի խորովս և բազմեցան յուտել։ Եւ իբրև կերան՝ պէտք եղև ըմպելոյ ջուր. և յոտն եկաց սուրբն Ներսէս, և մատուցեալ փորեաց զաւազն ի կղզւոջ, և բղխեաց աղբիւր՝ ջուր քաղցր և անոյշ, և անտի ըմպէին որք հանապազորդ էին ի կղզւոջն։ Այսպէս հանապազ հանդերձ եղբարբքն արեգական մտանելոյ կային, և ապա տէրունատուր կերակրովն ուրախ լինէին յընգենուլ ալեացն զկերակուր... Զայս օրինակ համակ տայր նոցա զքաջալերութիւն սուրբն Ներսէս ամս ինն որ եղեն յայն կղզւոջ։... Իբրև սատակեցաւ կայսրն՝ դարձան ամենայն հովիւքն եպիսկոպոսք որք աքսորեալք էին, յայնժամ դարձաւ և սուրբ կաթողիկոսն Ներսէս» (Բուզ. Դ. Ե, Զ, ԺԲ.)։

Այս պատմութեան առաջին մասն, թէ Ներսէս գնաց հրեշտակութեամբ առ Վաղէս, և որևիցէ պատճառաւ աքսորուեցաւ աղանդամիտ կայսերէն, անտարակոյս քիչ ժամանակ և ոչ ինը տարի, և ապա դարձաւ ի Հայս՝ չէ անհաւանական, ոչ այնչափ վասն վկայութեան Խորենացւոյն, որ զնոյն պատմութիւն կը կրկնէ համառօտիւ հանդերձ սքանչելեօք կերակրելոյ ի ձկանց, որչափ վասն զի աքսորել եպիսկոպոսունս հակառակ դաւանութենէ՝ սովոր էր Վաղէս, և որպէս ասացաւ՝ չէ անհաւանական, թէ և Ներսէս հանդիպեցաւ նոյն բախտին։ Գոլով պատմութեան միւս պարագաներուն, այն է մահուն կայսրորդւոյն գուշակութեամբ Ներսիսի, պահանջելոյ սորա կայսեր դարձն իբրև պայման բժշկութեան, նա և յարութեան իսկ որդւոյն, և մանաւանդ հրաշիւք կերակրելոյն նո-

*թա ևւրովքն ի հրաշալի ձկանց յամայի կղզւոջ ուրեք Ովկիանոսւ (Միջերկրականին)՝ են վէպք, հաւանականապէս առնուած վկայաբանութենէ ուստեք վարուցն Ներսիսի, ուր ինչ ինչ խառն է և ի պատմութենէ վարուց Բարսղի։ Չէ անհաւանական նոյնպէս և այն զոր կը պատմէ Բուզանդ, թէ Արշակ նեղանալով կայսեր վասն աքսորանացն Ներսիսի՝ արար թշնամական ինչ ցոյց, ասպատակ դնելով ի կողմանս ինչ Կեսարիոյ, բայց ոչ «զվեց ամ զմիմեանց զհետ».—«Եկին հասին դեսպանքն երթեալք ի կայսերէն առ թագաւորն Հայոց Արշակ, և մատուցանէին նմա զհրովարտակն կայսերն... և զանթիւ կարասի գանձուց առաջի թագաւորին։ Իսկ թագաւորն Արշակ իբրև լուաւ և ետես զայս ամենայն՝ անշնորհ առնէր զտալիսն և զբերելիսն կարասոյն։ Ի ցասումն մեծապէս բարկութեամբ ընդ կայսերն նիւթեաց, եթէ զիարդ իշխեաց արգելուլ զայնպիսի այր զմեծ և զպատուական, զգլուխ և զվարդապետ զառաջնորդ աշխարհի և զթագաւորութեան միոջ։ Քարինք բազումք, ասէ, ի վերայ կայսերն, և ձեր ի բերելդ. քարինք և մեր շատ կան ի թափել զատամունս նորա՝ ի տալն, և ձեր՝ ի բերելդ. զմեր վատթարութիւնս յո՛ տարայց. արդ այդմ երախտեացդ ես դարձուցանեմ։ Տայր հրաման Վասակայ իւրում զօրավարին զօր ժողովել, գունդս բովանդակել, եւանել հարկանել և աւար առնուլ զկողմանս Գամրաց։ Իսկ զօրապետն սպարապետն Վասակ փութվաղակի զտուեալ հրամանս նորա կատարէր. հարկանէր աւար առնոյր զկողմանս Գամրաց մինչև ի քաղաքն Անկուրացւոց. զվեց ամ միմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց» (Բուզ. Դ. ԺԱ.)։*

**30.** *Բուզանդ Ներսիսի բացակայութեան առթիւ կու տայ մեզ Խադ անուն եպիսկոպոսի ուրուք պատմութիւնը։ Այս Խադ ըստ Բուզանդայ էր ձեռնասուն Ներսիսի, ձեռնադրեալ ի նմանէ եպիսկոպոս Բագրևանդայ և Արշարունեաց։ Սմա յանձնած էր Ներսէս աղքատանոցաց տեսչութիւնը։ Այլուր կը կոչէ զնա Բուզանդ «աթոռակից» Ներսիսի (Դ. ԺԵ.)։ Ներսէս, ըստ Բուզանդայ, ի գնալն ի Յոյնս՝ թողուց զԽադ տեղակալ, որ հաւատարմութեամբ կատարեց զիւր պաշտօն։ Էր աղքատասէր, խնամոտ, անաչառ։ Բուզանդ չհանէր զԽադ ևս անմասն սքանչելագործութեան պարգևէն։ Հիւանդք կը բժշկէին ի ձեռն նորա. շտեմարանք և մառանք զոր կը թափէր (կը պարպէր) Խադ ի պէտս աղքատաց՝ կը լնուին հրաշիւք։ Գողք հարեալք կուրութեամբ կը բերեն յետ զիւրեանց գողօնն, և մեծապարգև լեալ կը մեկնին։ Դևք որ ըստ Բուզանդայ խաղապատէին զՊապ, և զորս յայտ յանդիման կը տեսնէր ամեն մարդ՝ զոտնաձայն միայն առեալ, որպէս զՆերսիսի,*

նոյնպէս զԽադայ՝ լինէին աներևոյթ.—«Այրս այս Խադ բուն էր ի Կարին գաւառէ, ի գեղջէ Մարագայ. Ձեռնասուն էր առ եպիսկոպոսապետին Ներսիսի, զառաջեաւ իւրով զսա էր սնուցեալ։ Այլ իբրև միտս աջողակս եբեր և յառաջադէմ եղև ի հաւատս և հաւատարիմ յամենայն գործս գտաւ, եւ առաւել ի պաշտօնն զոր ունէր և ի սէր ընդ եկեղեցին Աստուծոյ՝ ապա աղքատաց եւ տեսչութիւն ի սրբոյն Ներսիսէ սմա հաւատացաւ, և յայնժամ եւս առաւել զքարեխնամութիւն ցուցանէր։ Ապա եպիսկոպոսապետն Ներսէս յորժամ երթայր յուղեգնացութիւնն յերկիրն Յունաց՝ ձեռնադրեաց զսա Խադ յեպիսկոպոսութիւն Բագրևանդայ և Արշարունեաց, և եթող զսա իւր փոխանակ տեղապահ և գնաց։ Իսկ աշխարհ ամենայն Հայոց լեզուին, ի գաւառաց գաւառաց, կողմանց կողմանց, տեղեաց տեղեաց, մեծամեծք, աշխարհակալք, գաւառատեարք, նահապետք մեծազգեացք և ամենայն ուխտ քահանայութեան, ժողովք միաբանական ժողովրդոցն, ի սուգ տխրութեան ընկղմեալ էին վասն իւրեանց հօտապետ գլխաւորին, զի հեռացաւ ի նոցանէ։ Իսկ սուրբն Խադ եպիսկոպոսն առհասարակ աշխարհին տայր հրաման՝ ի պահս և յաղօթս մտանել և ի խնդրուածս, զի դարձ լիցի սրբոյն Ներսիսի։ Եւ զամենայն ժամանակս որչափ և արգելաւ նա անդ՝ համակ խնդրէին պահօք ժողովուրդքն, և յամենայնի իսկ Խադն առաջնորդէր նոցա ոչինչ պակաս քան զիւրեանց բուն զհովուապետն Ներսէս մինչև ի գալուստն նորա, մինչև կատարեաց Տէր զաշխարհի խնդրուածս, և դարձաւ սուրբն Ներսէս ի տեղի իւր»։ Եւ որովհետև անաչառ էր Խադ՝ «բազում անգամ կշտամբէր, ասէ Բուզանդ, և յանդիմանէր զթագաւորն Արշակ և զամենայն մեծամեծս և զիշխանս, մանաւանդ յորժամ ստիպէին զնա, թէ Եկ, ուղղեա սեղան յեկեղեցւոջն յաւանն յԱրշակաւանն (որ էր ի վիճակի նորա յԱրշարունիս)։ Ես, ասէր նա, տեղապահ եմ, և ոչինչ առանց այնորիկ որ թողն զիս հայրն՝ ունիմ իշխանութիւն գործել ինչ։ Ապա կամեցեալ Արշակ թագաւորն պատրուակաւ և ագահութեամբ կարասոյն մեքենայիւ խաբել զսուրբ եպիսկոպոսն Խադ՝ բազում ոսկի և բազում գանձս արծաթոյ և բազում նժոյգս զարքունական ձիոց արքունի օճառովք, ոսկիվարաւանդ ապրշմովն տայր նմա, պատրել հաճել զմիտս նորա, լինքն յանգուցանել։ Իսկ նա զկարասին զոր առնոյր յարքայէն՝ յանդիման նորա աղքատաց բաշխէր, և զյանդիմանութիւնն ոչինչ թուլացուցանէր, մինչև հրաման տայր արքայ հալածել զեպիսկոպոսն Խադ ի բանակէ անտի։ Իսկ նա ա՛ռ շրջել ընդ աշխարհն, կարգել և խրատել, ուսուցանել և դարմանել զաղքատսն, որպէս էր նմա յանձն արա-

բեալ սրբոյն Ներսէսի և իւր գնացեալ։ Բազում նշանք և արուեստք և զօրութիւնք, բժշկութիւնք հիւանդաց լինէին ի ձեռս նորա։ Իբրև պաշտէր զաղքատսն և սպառէր թափէր զամենայն յուրանս և զնորամանս և զմառանս գինւոյն, և զկարասս ամենայն մառանացն տայր բաշխել աղքատաց՝ երթայր յայլում աւուր տեսանէր լցեալ ինքնին իբրև ի հրամանէ Աստուծոյ, և դարձեալ օր ըստ օրէ մատակարարէր աղքատացն։ Ի ժամանակեան միոջ եկին գողք և գողացան զեզինս եկեղեցւոյն սրբոյ զԽադայ եպիսկոպոսին, առին և գնացին։ Իսկ ի միւսում աւուր աչք կուրացեալ եղեն գողոցն, և ինքեանք յանիմաստս առ խարխափս եկին անկին ի դուրս սրբոյն Խադայ զամենայն եզինսն։ Իսկ ինքն սուրբ Խադ ելեալ տեսանէր զնոսա, և գոհանայր զՏեառնէ, որ այնչափ վերակացու և այցելու եղև հաւատացելոց իւրոց։ Կայր յաղօթս եպիսկոպոսն Խադ և բըժշկէր զաչս գողոցն, և հրաման տայր լուանալ զսնձն նոցա, և դնէր ճաշ առաջի նոցա և քաջ ուրախ առնէր զնոսա մեծապէս։ Ապա օրհնէր զնոսա և տայր զեզինսն, զոր իւրեանց էր գողացեալ, և արձակէր զնոսա զիւրեանց ճանապարհն, և գնացին։ Եւ էին նորա երկու դստերք. և ետ զմինն Ասրկոյ ումեմն կին, և զկնի աներոյն իւրոյ նա կալաւ զաթոռն Խադայ» (Բուզ. Դ. ԺԲ.)։ Ըստ Բուզանդայ՝ Ներսէս գոհ էր մեծապէս զԽադայ, մանաւանդ երբ յետ դարձին ի Յունաց տեսաւ նորա անարատ վարքը և իմաստուն գնացքը.—«Իբրև եկն հայրապետն Ներսէս ի Հայս և ի վերայ հասանէր իւրում եռեղապաշհին սրբոյն Խադայ, զի էր կացեալ ի ճշմարտութեան և յուղղութեան, և գնացեալ էր զճանապարհս տեառն Աստուծոյ, զի զԽադ զհօգևոր որդեակն իւր եգիտ ըստ կամացն, որպէս ինքն կամէր՝ զնա անձկով տեսանէր. այլ յորժամ լսէր ի Խադայ զամենայն զանօրէնութիւնսն չարութեան ծուռ գնացիցն թագաւորին՝ արտմէր լայր ողբայր և կոծէր մեծամեծ հեծեծանօք» (Բուզ. Դ. ԺԴ.)։

**31.** Մինչ այս մինչ այն՝ Տապուհ, ժառանգական թշնամին Հայոց՝ կ'սպառնար, և մեծագոյն աղէտք այն էին, զի մեծ մասն նախարարաց Հայոց էին բաժանեալ թագաւորէն, կամ ոչ սերտիւ մի ընդ նմա։ Ցարձակումն ի կողմանէ Պարսից եկաւ հուպ ընդ հուպ, ոչ մի անգամ միայն, այլ բազմիցս. և թէպէտ Արշակ իւր աննման զօրավարովն Վասակաւ քաջութեամբ դէմ դրաւ իբր չորս կամ հինգ տարի՝ սակայն լքեալ պարտասեալ ի վախճանի, բռնադատեալ և իւր նախարարներէն, որ մի ըստ միոջէ լուծան քակեցան, ձեռս տուեալ ի թշնամին՝ ստիպուեցաւ երթալ անձամբ առ Տապուհ։ Բուզանդ երկար և մանր կը պատմէ Հայաստանի այս

հնգամեայ վիճակն, ինչպէս նաև զանձնատուր լինելն Արշակայ հանդերձ աղետիւք որ եկան ի վերայ ազգին։ Ահա Բուզանդայ պատմութիւնն, զոր քաղելով կը դնենք՝ թողլով աւելաբանութիւնները, մանաւանդ թուոց մասին։

«Իբրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորին Յունաց (Յովիանոս) և ի մէջ թագաւորին Պարսից՝ այնուհետև կազմէր զզօրս իւր Շապուհ, և խաղաց ի վերայ Արշակայ մարտի պատերազմաւ։ Իսկ սահմանապահքն թագաւորին Հայոց որ նստէին ի Գանձակ Ատրպատականի՝ վաղ ազդ առնէին նմա գիրսն, մինչչև հասեալ էր նա ի սահմանս Ատրպատականի։ Իբրև զայն զգայր Արշակ՝ հրաման տայր Վասակայ իւրում սպարապետին կազմել զամենայն զզօրս իւր և հասանել ի դիմի հարկանել թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապա արագ ժողովեալ ի մի վայր՝ հանդէս առնէր Վասակ սպարապետն ամենայն զօրացն Հայոց, և գտան հեծելազօր սպառազէնք կուռ վառեալք նիզակաւորք համակ վաթսուն բիւր (!), միասիրտք, միաբանք, միամիտք։ Հանդերձ նոքօք յառաջ խաղայր Վասակ, հասանէր, բախեալ ի դիմի հարկանէր թագաւորին Պարսից» (Բուզ. Դ. ԻԱ.)։ Ըստ Բուզանդայ՝ այս ճակատուն մէջ յաղթող հանդիսացան Հայք։ Բայց Շապուհ որ դրած էր ի մտի չտալ ոգի առնուլ Արշակայ՝ աւելի մեծ պատրաստութեամբ յարձակեցաւ, և այս անգամ յերիս առաջս, յորոց միոյն, եթէ պարտ է հաւատալ Բուզանդայ՝ կը զօրավարէր Շապուհ անձամբ։ Հայք այս անգամ ևս մղեցին երեք բաժիններն ևս.—«Թագաւորն Պարսից միւսանգամ ժողովէր զզօրս իւր անթիւ և անհամար իբրև զաւազ առ ափն ծովու, և փիղս բազումս, և ընդ երիս բաժանեալ զզօրսն՝ երկուց գնդացն զԱնդիկան և զՀազարաւուխտ զօրագլուխս կացուցանէր, և միում գնդին ինքնին թագաւորն լինէր զօրագլուխ։ Եւ հրաման տայր զօրացն ընդ երիս տեղիս խաղալ մտանել արշաւել յաշխարհն Հայոց։ Այս բանք վաղագոյն ազդ լինէին առ թագաւորն Հայոց Արշակ և առ զօրավարն նոցին Վասակ. բազում զօր ժողովեցին, և թէ բիւր տճապարեցին՝ սակայն զօրքն Պարսից արշաւէին յերկիրն Հայոց և ընդ երիս ասպատակէին։ Ապա և թագաւորն Արշակ զիւր զօրսն բաժանէր ընդ երիս, և տայր զմի գունդն Վասակայ սպարապետին, և զերկրորդ գունդն ի ձեռն Բագոսի եղբօր նորին, որ ի գործ արութեան քաջ էր անհնարին, բայց ի գործ իմաստութեան բախած էր, և զմիւս գունդն իսկ թագաւորն Արշակ առնոյր։ Ապա գայր սպարապետն Վասակ, գտանէր զառաջին առաջն զօրացն Պարսից զՀազարաւուխտն, զի հասեալ էին ի գաւառն Վանանդայ, ի տեղւոջն որ անուանեալ կոչէր Երևեալ, և բախէր ընդ-

դէմ զօրացն Պարսից մարտիւ պատերազմաւ։ Ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից, դարձան ի փախուստ, ցրուեցան սփռեցան։ Նոյնպէս և Բագոս հանդերձ զօրօք որ ընդ իւրև էին՝ գտանէր զառաջ երկրորդ զօրացն Պարսից և զԱնդիկան զօրագլուխ նոցա, զի հասեալ մածեալ բանակէին ի վերայ ձկնատենիցն Առեստայ։ Վաղ զգացին զօրքն Պարսից զհասանել Բագոսին, և պատրաստեցան ի մարտ պատերազմի ընդդէմ զօրացն Հայոց։ Ապա հասանէր Բագոսն ամենայն գնդաւն, ընդդէմ յարձակէին ճակատուն Պարսից, անդէն հարկանէին սատակէին։ Ապա դիպէր Բագոսն գնդին փղացն, և տեսանէր զմի ի փղաց անտի մեծապէս զարդարեալ, և զարքունական նշանս ի վերայ արձակեալ։ Համարեցաւ զթագաւորն ի փղին լայնմիկ. իջանէր յերիվարէն, հանեալ զսուսերն իւր յարձակէր ի վերայ փղին. զէն վերացոյց եմուտ ի ներքոյ փղին. հարկանէր զներդս փղին, և անդէն ընկենոյր զփիղն ի վերայ անձին իւրոյ, և սատակէին երկոքեան, զի ոչ ժամանէր ելանել ի ներքուստ ի փղէն։ Իսկ թագաւորն Արշակ հանդերձ զօրօքն որ ընդ իւրն էին՝ հասանէր գտանէր զինքնին թագաւորն Շապուհ, զի հասեալ մածեալ բանակեալ էր ի գաւառին Բասենոյ ի տեղիսն որ անուանեալ կոչի Ոսխա։ Ապա անկանէր գիշերի արքայն Արշակ ի վերայ բանակին Պարսից։ ՅԱստուծոյ եղև մեծ աջողութիւն յաղթութեան։ Ապա ի կողմանս Պարսից ասպատակէին, և հարկանէին մինչև ի կողմանս որ կոչին Խարտիզան» (Բուզ. Դ. ԻԲ.)։

**32.** Անմիաբանութեան վրայ որ արդէն կը տիրէր ի մէջ Արշակայ և Նախարարաց՝ յաւելաւ ուրիշ վէճ։ Մերուժան ոմն Արծրունի, թերևս ի վրէժ կոտորածին Արծրունեաց տոհմին առ Տիրանաւ՝ ապստամբելով յԱրշակայ գնաց առ Շապուհ, և ուրանալով զհաւատն՝ եղաւ այնուհետև առաջնորդ գրեթէ յամենայն արշաւանս զօրուն Պարսից.—«Յայնմ ժամանակի ապստամբեաց յարքայէն Հայոց մի ոմն ի նախարարաց մեծամեծացն, Մերուժան անուն Արծրունի, և չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից Շապհոյ, և դնէր ընդ նմա ուխտ երդմամբ, զի յաւիտեան ծառայ լիցի նմա։ Ուրացաւ ի կենացն իւրոյ զոր յԱստուածն ունէր, զի եթող զօրէնս քրիստոնէութեան և խոստովան եղև վասն անձին իւրոյ, թէ չեմ քրիստոնեայ. և կալաւ զօրէնս մազդեզանցն, այսինքն զմոգուցն. երկիր եպագ արեգական և կրակի և խոստովան եղև, թէ աստուածք այն են՝ զոր թագաւորն Պարսից պաշտէ։ Եդ ուխտ ընդ Շապհոյ յայնմհետէ, թէ իցէ և կարասցէ յաղթել Շապուհ Հայոց և ունել զաշխարհն և ինձ դարձ լիցի յիմ աշխարհն և յիմ տունն՝ նախ ես, ասէ, շինեցից ատրուշան յիմում տանն սեպհա-

կանոն, այսինքն տուն կրակին պաշտելոյ։ Եւ զզօրսն Պարսից պատրաստէին առաւել ևս քան զառաջինն, և առաջնորդ ունէին զչարագործն Մերուժան, ասպատակել յաշխարհն Հայոց։ Յանկարծօրէն այրեացաւեր զերկիրն Հայոց առնէին առաջնորդ Մերուժանաւ. զարս տային ի կոխումն փղաց, և զկանայս ընդ ցից սայլից հանէին, առնուին կոտորէին զամենայն բնակիչս վերնագաւառացն Հայոց։ Մինչդեռ թագաւորն Արշակ ի կողմանս ստորին գաւառացն յԱնգեղ տան էր յուտեստ՝ զմիջնաշխարհն քանդեալ բրեալ զօրքն Պարսից ապականէին։ Ապա զօրաժողով լինէր Վասակ զօրավարն Հայոց, և որ հասին ի ժամանակի անդ ի ձեռս նորա տասն հազար հեծեալ ընտիր ընտիր և քաջ այրուձի, կազմ զինու և բազում պատրաստութեամբ, և հանդերձ նօքօք խաղայր, ի կերթ ձգեալ հասանէր զօրացն Պարսից։ Իբրև զգացին զօրավարք զօրաց թագաւորին, եթէ զօրաժողով է ի վերայ նոցա Վասակ՝ զմնացորդս աշխարհին զերփեցին զերեցին առին և փախեան յաշխարհն իւրեանց ճեպով տագնապաւ։ Զհետ կրթեալ Վասակ՝ երթայր հասանէր նոցա և թափէր զամենայն զառեալ գերութիւնն, և դառնային խաղաղութեամբ առ թագաւորն Արշակ» (Բուզ. Դ. ԻԳ.)։

Այս արշաւանաց յաջորդեց միւս ևս մեծագոյն ի հարաւոյ ընդ Աղձնիս և ընդ Ծոփս, մինչ Արշակ և Վասակ հանդերձ բանակաւն կային ի պահ ի սահմանս Ատրպատականի։ Այս արշաւանաց աւերն որ շատ ծանր եղաւ Հայոց՝ մանր կը նկարագրէ Բուզանդ. — «Ապա յետ այսորիկ Մերուժանն վատանշան գրգռէր զթագաւորն Պարսից ի վերայ Արշակայ մեծաւ բարկութեամբ։ Զօրաժողով լինէր Շապուհ և լրտեսս արձակէր դիտել զարքայն Հայոց զԱրշակ։ Եւ մինչդեռ նա զգուշացեալ հանդերձ իւրովք զօրօքն զԱտրպատական սահմանօքն սպասէր զօրացն Պարսից՝ նոցա առաջնորդ կալեալ զՄերուժանն՝ ընդ Աղձնիս և ընդ Ծոփս մեծ, ընդ Անգեղ տունն և ընդ գաւառն Անձտայ, ընդ Ծոփս Շահունեաց, ընդ Մզուր գաւառն և ընդ Դարանաղէ, ընդ Եկեղեաց, հեղեալ ծաւալէին բազմութեամբ իբրև զջուրս բազումս։ Այրեացաւեր առնէին և զանթիւ մարդիկ արկանէին ի սուր սուսերի իւրեանց, զկանայս և զմանկտի հանէին ընդ ցից սայլից, և զկէսս ի ներքոյ կամացն արկեալ կասուին։ Զարանց բազմութիւնս տային ի կոխումն փղաց, և զառանց թուոյ զմատաղ մանկտին ի գերութիւն վարէին, և զբազում ամուրս քանդէին, և զբերդս աւերէին զամուրս։ Եւ առին աւերեցին զմեծ քաղաքն Տիգրանակերտ որ էր ի գաւառին Աղձնեաց յիշխանութեան բդեշխին, քառասուն հազար երդ, զայն նոյնհետայն ի գերութիւն խաղացուցին, և ինքեանք ի Ծոփս

մեծ արշաւեցին, և անդ՝ էին բերդք զոր առին, և էր զոր ոչ կարացին առնուլ։ Եւ գային պաշարկանէին շուրջ զԱնգեղ զամուր բերդաւն որ է յԱնգեղ տանն գաւառին, զի անդ էին բազում Հայոց թագաւորացն գերեզմանք շիրմացն արանցն Արշակունեաց. բազում գանձք մթերեալ մնացեալ կային ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ։ Զաւան պաշարկին զբերդաւն. ապա իբրև ոչ կարէին առնուլ վասն ամրութեան տեղւոյն՝ թողուին և գնային։ Բայց միայն մատնեցաւ ի ձեռս նոցա ամուր բերդն Անի ի Դարանաղեաց գաւառի անդ, զի չարագործն Մերուժան հնարաւորութեամբ մեքենայէր ամուր բերդին այնմիկ։ Ելանէին ի վեր և կործանէին զպարիսպ նորա, և իջուցանէին անթիւ գանձս ի բերդէն։ Եւ բանային զգերեզմանս զաւաջին թագաւորացն Հայոց զարանց քաջաց զԱրշակունւոյ, և խաղացուցանէին ի գերութիւն զոսկերս թագաւորացն, բայց միայն զգերեզման շիրմին Սանատրկոյ արքային ոչ կարացին բանալ վասն անհեդեդ սկայագործ հաստաշինած ճարտարագործ արարածոցն։ Ապա գնացեալք անտի ի բաց մերժէին, ընդ այլ դիմեալ ասպատակս կապէին, և ընդ կողմանս Բասենոյ յառաջ խաղացեալ՝ կամէին ի թիկանց կուսէ անկանել հասանել ի վերայ զօրացն թագաւորին Հայոց։

Մինչդեռ այս ամենայն լինէր՝ գուժկան հասանէր առ թագաւորն Արշակ, և ասեն նմա. Դու աւադիկ առաջոյ սպասես թշնամեացն, նստիս յԱտրպատականի. իսկ թշնամիքն զթիկամբք անկեալ կոտորեցին զաշխարհս, և արդ դիմեալ գան ի վերայ քո։ Իբրև զայս լսէին թագաւորն Հայոց Արշակ և զօրավարն նորին Վասակ՝ հանդէս առնէին զօրացն իւրեանց։ Եւ գտան ի ժամանակին անդ ընդ ձեռամբ զօրավարին Վասակայ արք գործոյ իբրև վաթսուն հազար, ընտիրք և պատերազմողք, միամիտք և միասիրտք՝ հասանել մարտնչել ի վերայ որդւոց և կանանց իւրեանց և ի վերայ աշխարհին դնել զանձինս՝ իւրեանց և փոխանակ բնակ տերանց իւրեանց Արշակունւոց։ Զի անգամ ոսկերք թագաւորացն մեռելոց և բազում ժողովուրդք խլեալք յիւրաքանչիւր տեղեաց փոխեցան յօտարութիւն։ Ապա Վասակ սպարապետն հանդերձ վաթսուն հազարօք յառաջ խաղայր, դարձեալ ընդ կրունկ՝ թողայր զթագաւորն Արշակ յամուր տեղւոջ ուրեմն յերկին Մարաց հանդերձ սպասաւորօքն, և ինքն գայր հասանէր ի միջնաշխարհն Հայոց ի գաւառն Այրարատու. և հասանէր գտանէր զզօրսն Պարսից, զի հասեալ մածեալ էին բազմութեամբ, բանակեալ զգաւառաւն Այրարատեան. հանդերձ գնդաւն որ ընդ իւր էին՝ անկանէր ի վերայ բանակին ի գիշերի յեղակարծումն ժամանակի. զբազումս ընդ սուր

հանէր, և զմնացեալսն հալածէր արտաքոյ սահմանաց աշխարհին։ Առնոյր աւար բազում և թափէր ի նոցանէ զոսկերս թագաւորացն, զոր Պարսիկք խաղացուցեալ տանէին ի գերութիւն յաշխարհն Պարսից, զի տանէին ըստ իւրեանց հեթանոսութեան օրինացն, թէ վասն այսորիկ բարձեալ տանիմք զոսկերս թագաւորացն Հայոց յաշխարհն մեր, զի փառք թագաւորացն և բախտքն և քաջութիւն աշխարհիս աստի գնասցեալ ընդ ոսկերս թագաւորացն յաշխարհն մեր եկեսցեն։ Եւ զոսկերս թագաւորացն Հայոց զորս թափեաց Վասակ՝ հանեալ թաղեցին յամուր ի գեւղն որ Աղձքն անուանին, յԱյրարատ գաւառին, որ կայ ի խինձս ի գոգս ի ծոցս յանձուկս ի գժուարս լերինն մեծի զոր Արագածն կոչեն։ Եւ ինքեանք փոյթ առնէին զաշխարհն նուաճել, յարդարել կարգել յօրինել շինել յաւերածոյն և յայրեցածոյն։ Բայց յայնմ նուագի եւս ապրէր Մերուժանն չարագործ» (Բուզ. Դ. ԻԴ.)։

Արշակ, ինչպէս կ'երևի, Պարսից սաէպ արշաւանացն առաջն առնլոյ համար կամելով երկիւղ տալ նոցա՝ հաճեցոյց զՀոնս և զԱլանս, և նոքօք հանդերձ ինքն սկսաւ գնել ասպատակ յերկիր սահմանացն Պարսից, այն է յԱտրպատական.—«Ապա զօրաժողով լինէր Արշակ արքայ Հայոց, կոչեալ զՀոնսն հանդերձ Ալանօքն յօգնութիւն՝ դիմէր ի վերայ Պարսից. այլ և թագաւորն Պարսից հանդերձ իւրովք զօրօքն ի ժամանակի անդ յայնմիկ խաղացեալ գայր ի վերայ Հայաստան երկրին. բայց սոքա փութացեալք հասանէին յԱտրպատական, և գտանէին զբանակն արքային Պարսից ի Թաւրէշ բանակեալ։ Հասանէր Վասակ սպարապետն, անկանէր ի վերայ բանակին Պարսից. կոտորեցին զբազումս և առին աւար բազում, և ինքեանք զգուշացեալ երկրին իւրեանց՝ պահ արկեալ պահէին մեծաւ զգուշութեամբ» (Բուզ. Դ. ԻԵ.)։ Շապուհ կ'սկսի այնուհետև մանր մանր յարձակումներով ջանալ յոգնեցունել և շփոթել զԱրշակ։ Բուզանդ քսան և երեք այսպիսի մանր արշաւանս կը դնէ այլևայլ նշանաւոր պարսիկ նախարարաց զօրավարութեամբ։ Թերևս այս արշաւանաց շատերը լինէին միևնոյն ժամանակ այլևայլ կողմերէ։ Այսպէս դնել հարկ է, ապա թէ ոչ եբր հնգամեայ ժամանակի մէջ, գնելով Բուզանդայ այս պատմութիւնը ճշմարիտ՝ այնչափ ճակատներ մի զմիոյ կնի տրուած դնել անհնար է, մանաւանդ եթէ առնունք ի հաշիւ ձմեռնային ամիսներն որ չեն նպաստաւոր պատերազմի։ Այսպիսի մեքենաւորութիւն, այն է մանր և խիտ կռիւներով սպառել արդէն տկար հակառակորդի զօրութիւնը, Շապհոյ կողմանէ խորհուած և ի գործ դրուած՝ չէ անհաւանական. միայն Բուզանդ, ըստ իւրում սովորութեան, Պարսից

զօրաց թիւը մանաւանդ կ'ստուարացունէ, հանելով զայն մինչև չորեքհարիւր հազար, նա մինչև իննսուն, ևս և մինչև չորեքհարիւր բիւր, որ անհնարին է։ Զայս աւելաբանութիւն կը թուի առնել Բուզանդ երևցունելու համար Հայոց յաղթութիւններն աւելի փառաւոր, կամ որոշեալ թիւեր չափազանցութեամբ կ'առնու փոխանակ անորոշ թուոց, ինչպէս յայտնի է սա ընդհանուր ձևերէն, զորս կը գործածէ երբեմն, «անթիւ զօրօք», «իբրև զաւազ առ ափն ծովու բազմութեամբ», «անչափ բազմութեամբ» և որ սոցին նման են։ Այս արշաւաններն կը գտնենք հոս կարգաւ համառօտիւ, հանդերձ զօրավարներուն անուամբ։ Թէ այս բոլոր կռիւներուն մէջ միշտ յաղթող կը հանէ Բուզանդ զՀայս՝ և այս չէ զարմանալի։ Հայք ոչ միայն յարուեստի զինուորութեան գեր ի վերոյ էին քան զՊարսիկս, որոց մեծ զօրութիւնն այրուձին էր, և յայսմ նշանաւոր էին նաև Հայք, այլև իբրև բնիկք՝ քան Պարսից զօրավարներն շատ աւելի հմուտ էին երկրին որ էր ի բնէ դժուարին և անմատոյց. գիտէին կարճագոյն ճանապարհօք յանկարծ ի վերայ հասանել և արագ արագ ցրուել զնոսա։

**33.** Քսան և երեք մանր մանր ասպատակութեանց զօրավարներ էին.—1. Վին ոմն։ 2. Անդիկան զօրագլուխ։ 3. Հազարաւուխտ որ կ'արշաւէր ընդ Աղձնիս։ 4. Դմաւունդ Վսեմական, Կաւոսական տոհմէ։ 5. Վահրիճ որ եկաւ մինչև Մախազան կոչուած տեղը։ 6. Գումանդ Շապուհ առաջնորդութեամբ Մերուժանայ։ 7. Դարձեալ առաջնորդութեամբ Մերուժանայ Դեհկան Նահապետ, «որ տոհմիկ իսկ էր, ասէ Բուզանդ, ազգաւ տոհմին զօրավարացն Հայոց, այսինքն Մամիկոնենից. գայր հասանէր ի սահմանս երկրին Հայոց, և զՀայացիսն ոչինչ ծուլացեալ ի քուն գտանէր,... և զօրավարն Վասակ... սպանանէր զիւր զազգային զԴեհկան Նահապետն, և զմնացեալսն առաջի իւր տանէր փախստական ձիահալած արարեալ»։ 8. Դարձեալ առաջնորդութեամբ Մերուժանայ Սուրէն պահլաւ, «որ ազգակից էր Արշակայ թագաւորին Հայոց»։ 9. Վսեմական ոմն հանդերձ Մերուժանաւ։ 10. Զիկ նուիրակապետ արքային, առաջնորդութեամբ Մերուժանայ։ 11. Այլ ոմն Սուրէն Պարսիկ, ոչ Պահլաւ։ «Եղանէր, ասէ Բուզանդ, Վասակ սպարապետն Հայոց, գիշերի անկանէր ի ներքս ի ղակիշն ի հետիոտս, սուսեր ի ձեռն, տասն հազարաւ ընտիր արամբք. ձերբակալ առնէին զՍուրէն Պարսիկ, և Ա շակ հրաման տայր քարակոծ առնել զնա»։ 12. Առաջնորդութեամբ Մերուժանայ Հրևշողում, որ կը թուի լեալ Պահլաւ, քանզի «էր ազգական Արշակայ», ասէ Բուզանդ։ 13. Ալանայոզան նոյնպէս Պահլաւ, «ի տոհմէ Ար-

շակունեաց»։ 14. Բոյեկան, զոր Բուզանդ կը կոչէ «մեծ նախարար Պարսից»։ «Գայլն հասանէին, ասէ, յԱտրպատական, կամէին ապատակ առնել յերկիրն Հայոց. ապա զառաջեօք անկանէր Վասակ իւրով հայաստան գնդաւն, հարկանէր զզօրսն Պարսից, և զԲոյեկան սպանանէր ի Թաւրէժ, և այրէր անդ զապարանս թագաւորին Պարսից, և գտեալ անդ զպատկեր թագաւորին Պարսից՝ նետաձիգ եղեալ նետալից առնէր»։ 15. Վաչական ոմն «ի նախարարաց Պարսից», հանդերձ Մերուժանաւ։ 16. Մշկան ոմն, դարձեալ «ի նախարարաց Պարսից»։ 17. Մարիճ ոմն, «մեծ նախարար»։ 18. Զկնդկապետ ոմն, «փորագլուխ զօրացն թագաւորին Պարսից», առաջնորդութեամբ Մերուժանայ։ «Հասանէր, ասէ Բուզանդ, ի սահմանս Ատրպատականի։ Կանխէր եկանէր ընդ առաջ նոցա Վասակ, անկանէր ի ղակիշն Պարսկաց, սպանանէր Զընդկապետն ի մէջ բանակին»։ 19. Սակստան անդերձապետ, դարձեալ Մերուժանաւ։ Այս թուի լինել կանոնաւոր բանակ։ «Եկին ծաւալեցան, ըստ Բուզանդայ, ճակատեցան ընդ թագաւորութեանն Արշակայ։ Ապա ի մի վայր եկեալ ամենայն մեծամեծք նախարարացն Հայոց՝ խորհուրդ խորհէին. ոչ առնուին յանձն երբէք թէ թագաւորն Արշակ մտցէ ընդ նոսա ի պատերազմ։ Զօրավարն Վասակ հանդերձ ամենայն մեծամեծօք և նախարարօքն ամենայն Հայոց Մեծաց հարկանէր զզօրսն Պարսից, և սպանանէր զՍակստան անդերձապետ»։ 20. Նապատան տակառապետ Նապհոյ. բայց չկարաց մտանել ի Հայս։ 21. Մոգաց անդերձապետն։ Հայք՝ «եթէ կարի շատ աճապարեալ՝ այնչափ ժամանեցին մինչև ի Մախազան կարացին հասանել. անդ ընդ միմեանս գունդքն երկոքեան բախէին. ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից»։ Այս անգամ ևս առաջնորդ էր Մերուժան, որ որպէս յայլ նուագս՝ նոյնպէս այս անգամ ի «ի տաճիկ ձի նստեալ փախչէր»։ 22. Համբարակապետն թագաւորին Պարսից հանդերձ Մերուժանաւ «հասանէր ի գաւառն Կորճէից ի Սաղամաս... այլ Վասակ դարանամուտ լեալ ընդ կողմանս բանակին՝ ի գիշերին անկանէր ի ղակիշն տասն հազարաւ ընտիր զօրու», և Պարսիկք չհասան այս անգամ ևս իւրեանց նպատակին, այն է մտանել ի Հայս։ 23. Մռիկան «մեծ զօրագլուխ Պարսից»։ «Զօրքն Հայոց, ասէ Բուզանդ, խրոխտացեալ հանդերձ իւրեանց զօրավարաւն Վասակաւ՝ գազանաբար առիւծաբար դէմ ընդ դէմ յարձակէին»։

Ինչպէս տեսանք՝ այս ամէն արշաւանաց շատերուն մէջ էր Մերուժան, իբրև առաջնորդ և ոչ իբրև զօրավար։ Հայք բռնեցին պաշտպանողական դիրք, ջանալով չտալ Պարսից մուտ ի ներքս յաշխարհն։ Արշակայ զօրութեան մեծ մասը կեդրոնացած էր արև-

ւելեան սահմանին վրայ, և կռիւք եղան ընդհանրապէս հոն։ Պարսից դիտումը կ'երևի թէ էր այն զօրութիւնը ցրուել։ Վասակ և զօրավարք նորա սակաւուք և ընտիր զօրօք, որոց թիւը ճշդիւ կուտայ մեզ Բուզանդ, այն է իբր տասն հազարաւ, ընդհանրապէս գիշերային Պարսից բուն ղակշին վրայ յարձակելով յանկարծ՝ կը շըփոթէին և կը ցրուէին։ Այսպէս Հայք, թէպէտ քաջութեամբ պաշտպանեցին իրենց դիրքը, և երկիրը մնաց ազատ յաւերածոյ՝ բայց Շապուհ հասաւ իւր նպատակին, որ էր յոգնեցունել, վհատեցունել և ցրուել Հայոց միութիւնը։

**34.** «Չերեսուն և զչորս ամս, ասէ Բուզանդ,—ի մահուանէն Տրդատայ եթէ հաշուենք՝ արդարև կը գտնենք այսչափ տարի—եւուն՝ պատերազմ երկիրս Հայոց ընդ Թագաւորին Պարսից, և յետ այնորիկ ձանձրացան պարտեցան լքան աշխատեցան, և սկըսան սորսորել գնալ ի բանակէն Հայոց թագաւորին. Թողին զիւրեանց արքային Արշակ։ Բայց նախ այսմ գնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին։ Նախ բդեաշխն Աղձնեաց և Նոշիրական բդեաշխն և Մահկեր տանն, և Նիհորականն և Դասսընտրէին, և ամենայն Նախարարութիւն Աղձնեաց, և զօրն և տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէն Հայոց Արշակայ, և չոգան կացին առաջի արքային Պարսկաց Շապհոյ, և պարիսպածէին ի Հայոց կուսէ որ Զորայն կոչեն, դրունս գնէին. և զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց։ Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, և յետ սորա Զորայ գաւառին տէրն, և Կողբայ գաւառին տէրն, և ընդ նոսա Գարգմանաձորոյ տէրն։ Եւ որք մօտ էին ի նոսա կողմն այնր ձեռւին, որ շուրջ էին զնոքօք՝ միահաղոյն ապստամբեցին ի թագաւորէն Հայոց Արշակայ և չոգան գնացին առաջի կացին թագաւորին Պարսից Շապհոյ։ Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուր գաւառն Արձախայ, և ամուր գաւառն Տմորեաց, և ամուր աշխարհն Կորդեաց. ապա և տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից։ Յետ այսորիկ ապստամբեաց ի թագաւորէն Հայոց և ձեռւին իշխանութեան տունն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպատական աշխարհաւն. յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց. յետս եկաց յարքայէն Հայոց և աշխարհն Կազբից։ Եթող զարքայն Հայոց և գնաց Սաղամուտ տէրն Անձատեայ, և ընդ նմա իշխանն մեծի Ծոփաց, և գնացին առ թագաւորն Յունաց։ Միջնաշխարհն մնացեալքն յերկուցան յարքայէն. և ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց, ոչ մի ինչ իբս զոր նա կամէր։ Եւ գձձեցաւ թագաւորութիւնն մեծապէս» (Բուզ. Դ. Ծ.)։

**35.** *Այս ամէն թշուառութեանց վրայ միւս ևս թշնամի ի ներքուստ յաւելաւ Հայոց, այն է Վահան Մամիկոնեան, կրտսեր եղբայր սպարապետին։ Սա ուրանալով զհաւատսն, փեսայանալով ևս Շապհոյ՝ միացաւ ընդ քեռորդւոյն իւրում Մերուժանայ և եղաւ գործակից նմա յանհնարին չարիսն, զորս հասուցին սոքա թշուառ ազգին, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև.—«Եւ Վահան եղբայր Վասակայ սպարապետին, ի Մամիկոնեան տոհմէն, անկաւ ի բանս հրապուրանաց Մերուժանայ Արծրունւոյ քեռորդւոյ իւրոյ։ Եւ ապստամբեալ յԱրշակայ արքայէն Հայոց՝ չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից Շապհոյ և հաճեաց զմիտս նորա։ Ուրացաւ ի կենաց իւրոց զոր ի Քրիստոսն ունէր, և յանձն առ պաշտել զօրէնս մոգութեանն, այսինքն երկիր պագանել կրակի և ջրոյ և արեգական, և ուրանալ զօրէնս քրիստոնէութեանն յորում ծնեալն էր։ Եւ եղև նա ըստ մտի թագաւորին Պարսից, և մատուցանէր ևս ամբաստան գրգռութիւն զարքայէն Հայոց Արշակայ և զիւրմէ տանուտեառնէն Վասակայ, և յիշեցուցանէր ևս նմա զմահն Վարդանայ, թէ յաղագս քո մեռաւ։ Եւ եղև նա այնուհետև սիրելի Շապհոյ արքային, և ետ նա կին Վահանայ զՈրմիզդուխտ քոյր իւր, և շնորհեաց նմա բարձ և զպատիւ որ նոցուն լեալ էր նախնեաց, և մտերիմ փեսայ արար զնա իւր թագաւորն, և ի մէջ զօրաց իւրոց շքեղացոյց զնա, և խոստացաւ նմա կեանս մեծամեծս առնել։ Իսկ թիւն Հայոց պակասեաց յայսմհետէ և յապա» (Բուզ. Դ. Ծ.)։*

**36.** *Ինչպէս տեսանք՝ գրեթէ բոլոր սահմանակից գաւառք ապստամբած էին յԱրշակայ. մեծ մասն ի նախարարաց, մանաւանդ արևելեան և հարաւային գաւառաց, ինչպէս նաև հիւսիսայինքն՝ տուած էին ձեռս ի Շապուհ, և արևմտեանք որ էր փոքր մասն՝ ի կայսր. իսկ մնացեալքն, որ էին նախարարք միջին նահանգաց՝ բոլորովին յուսահատեալ կու գան առ Ներսէս և կը յայտնեն զխորհուրդ իւրեանց, թէ այլ ևս չէին կարող կռուել վասն երկրին և վասն թագաւորին իւրեաց, ուստի լաւագոյն կը համարէին մատնել զերկիրն Շապհոյ և ծառայել նմա։ Ի զուր կը յորդորէ զնոսա Ներսէս մընալ հաւատարիմ թագաւորին իւրեանց, յիշեցունելով նոցա զայնչափ երախտիս զորս ընդունած էին յԱրշակունեաց, այնչափ պատերազմներն զորս մղած էին իւրեանց անձանց, ընտանեաց, երկրին և եկեղեցեաց համար, և ցուցնելով մեծ վտանգը ծառայելու հեթանոս թագաւորի։ Բանք Ներսիսի մնացին առանց ազդեցութեան. ժողովը ցրուեցաւ մեծ ամբոխիւ և աղաղակաւ, և նախարարք մեկնեցան իւրաքանչիւր ի տուն իւր.—«Ապա ժողովեցան մարդիկ ամենայն աշխարհին իշխանութեան թագաւորութեանն Հայոց, և եկին*

առ մեծ եպիսկոպոսապետն Հայոց Ներսէս, մեծամեծք, նախա-
րարք, կուսակալք, կողմնակալք, գաւառատեարք, գործակալք և
դասապետք շինականաց. խօսել սկսան ընդ Ներսիսի և ասեն. Դու,
տէր, քեզէն գիտես, զի այսչափ ժամանակ է, և ոչ մի ամ մեզ
հանգիստ ոչ եղև ի պատերազմէ, և համակ սրով և սուսերօք և
ի սլաքս և ի տէգս նիզակաց զքրտունս երեսաց մերոց ջնջեցաք։
Եւ արդ ոչ կարեմք այսմ զժոյժ ունել, և ոչ կարեմք տալ ճա-
կատս. զի լաւ է մեզ թէ ծառայեսցուք մեք թագաւորին Պարսից
որպէս ընկերքն մեր արարին, կի թողին զնա և գնացին առ թա-
գաւորն Պարսից. և մեք սոյնպէս առնելոց եմք, զի ոչ այլ ևս կա-
րեմք կռուել։ Թէ պէտ իցէ թագաւորին Արշակայ կռուել ընդ
Շապհոյ՝ Վասակաւ և Անդուկաւ աներաւ իւրով տացէ պատերազմ.
այլ յայսմիկ Հայոց աշխարհէս և ոչ մի այր ոչ ոք է երթալոց ի
թիկունս օգնականութեան նորա։ Նմա եթէ պէտ իցէ՝ տացէ պա-
տերազմ, թէ պէտ՝ մի. մեր թողեալ զնա, մեզ չէ փոյթ։ Իսկ
սուրբն Ներսէս խօսէր ընդ նոսա որպէս օրէն էր, եթէ Տեսէք և
քաջ զմտաւ ածէք, և յիշեցէք զբանն Տեառն պատուիրանին միա-
բանութեամբ որպէս պատուիրեացն՝ ծառայից հնազանդ կալ տե-
րանց իւրեանց։ Զի ամենեքեան դուք աւադիկ կայք և վկայէք,
մանաւանդ զի ամենեքեան դուք կեցեալ էք յազգէդ Արշակունւոյ.
ոմանք ի ձէնջ գաւառատեարք լեալք ի նոցանէն, և ոմանք մե-
ծամեծք աշխարհաց, ոմանք աւագ աւագ աւանաց, գեղից և գան-
ձուց տեարք լեալ էք, և պէսպէս դաստակերտացն։ Զի թէպէտև
առ արարիչն Աստուած յանցաւոր իցեն պիղծ ազգն Արշակունեաց՝
սակայն զձեզ կեցուցեալ զամենեսեան և յաղբոյ թօթափեալ է,
զոմն գործով, զոմն պատուով, զոմն իշխանութեամբ, զոմն գոր-
ծակալութեամբ։ Զի թէպէտև առ Աստուած մեղաւոր է Արշակ
արքայ, և պարտական է տակոսեաց արարչին իւրոյ առ ի տալ
նմա վրէժս՝ սակայն Աստուած վասն բազում և անչափ մարդասի-
րութեան իւրոյ խնայեաց ի նա, և վասն նորա ձեզ։ Եւ դուք ա-
ւադիկ կամիք անկանել հեթանոսաց ի ծառայութիւն, և կորուսա-
նել զկեանս ձեր յԱստուծոյ, և մերժել զբնակ տեարսն ձեր զորս
տուեալ է ձեզ յԱստուծոյ, և օտար տերանց ծառայեալ, և նոցին
անաստուած կրօնիցն ցանկալ։ Բայց լաւ լիցի ձեզ զնոյն սիրել և
յանձն առնուլ և նմին հաւանել, և մերժել յանձանց ձերոց զա-
րարչապաշտ թագաւորն։ Զի թէ բիւր չար իցէ Արշակ՝ սակայն
աստուածապաշտ է, և եթէ մեղաւոր ես իցէ՝ սակայն թագաւոր
ձեր է. որպէս և դուքդ ասացէք առաջի իմ, թէ այսչափ ամք են
զի մարտեայք ես ի վերայ անձանց ձերոց և հոգւոց, ի վերայ

աշխարհի, ի վերայ կանանց և որդւոց ձերոց։ Եւ որ մեծն է քան զամենայն՝ ի վերայ եկեղեցեաց ձերոց, ի վերայ ուխտի հաւատոց ձերոց, զոր ունիմք ի տէր մեր Յիսուս Քրիստոս, և համակ Տէր եա ձեզ յաղթութիւն անուան իւրոյ։ Եւ արդ կամիք փոխանակ Քրիստոսի արարչին ձերոյ ծառայել ձեզ անաստուածն մոգութեան անօրինացն և նոցուն պաշտօնէիցն, ի թողուլ նախ զարարիչն մեր և զնորուն պատուիրանս զոր պատուիրեաց ձեզ՝ միամիտ կալ առ տեարսն մարմնաւորս զորս նորայն արարեալ է. գուցէ բարկացեալ տէր Աստուած ձեր՝ և խլիցէ զձեզ արմատաքի, և մատնեսցէ զձեզ հեթանոսացն ի չար ծառայութիւն սարկութեան մինչև յաւիտեան, և ոչ երբէք բարձցի լուծն ծառայութեան ի ձէնջ։ Եւ բողոքիցէք դուք առ Տէր, և նա ոչ լսիցէ ձեզ. վասն զի անձամբ անկանիք դուք ի ծառայութիւն հեթանոս տերանց և անաստուած անգէտ մարդկան, ի ձեռս հեթանոս արանց տերանց խստասրտաց, և բազում չարի դիպեալ ելանիցէ առաջի ձեր, և ոչ կարիցէք ճողոպրել յայնմանէ։ Իսկ նոքա որ մի անգամ էին ի մի վայր ժողովեալ՝ զաղաղակ հարկանէին. քարոզ կարդացեալ միմեանց ձայն առնէին, շփոթէին ամբոխէին և ասէին. Հմայա գնասցուք, ասեն, սփռեցարուք յիւրաքանչիւր տեղիս, զի այդմ բանից մեք ինչ ոչ կարեմք լսել։ Սփռեցան յիւրաքանչիւր տունս իւրեանց» (Բուզ. Դ. ԾԱ.)։

**37.** Նապուհ որ յայս վիճակ հասուցած էր զՀայս՝ կ'սկսի դարձեալ հրաւիրել զԱրշակ աղաչանօք և ընծայիւք՝ գալ առնել խաղաղութիւն ի մէջ իւր և նորա։ Ապաքէն հեգնել էր այս, և Արշակ գիտնալով խորամանկութիւնը՝ կը խորհի ընդդիմանալ նմա մինչև ի վախճան. բայց երբ զօրքն յանձն չառնոյր պատերազմ, և Նապուհ կ'ստիպէր կամ երթալ անձամբ և կամ յանձն առնուլ պատերազմ, կը բռնադատուի ևս ազգէն զիջանել Նապհոյ՝ մտնելով նեղ՝ կը խնդրէ երդումն ի Նապհոյ ըստ Պարսից օրինի, և կ'երթայ ակամայ առ Նապուհ հանդերձ սպարապետաւ իւրով Վասակաւ, և կը դրուի ընդ պահպանութեամբ.—«Ապա Նապուհ արքայ Պարսից մեծ աղաչանօք և պատարագօք և հրովարտակօք և սիրով զԱրշակ առ ինքն կոչէր, զի յայնմհետէ արասցեն ի մէջ իւրեանց սէր և խաղաղութիւն և բարեկամութիւն մեծ։ Իսկ Արշակ արքայ թէպէտ պատերազմ կամէր տալ՝ այլ ոչ կամէին յանձն առնուլ այսմիկ ամենայն զօրքն աշխարհին Հայոց։ Ապա թէ կամաւ կամաւ, թէ ոչ կամաւ՝ սակայն եդ սիրտ՝ խոնարհութեամբ հրովարտակս առ Նապուհ արքայ Պարսից, որպէս վայել է ծառայի առ տէր իւր, տալ։ Եւ առաքէր յիւրմէ նմա պատարագս հաշտութեան։ Յետ այսորիկ դարձեալ առաքեաց առ Արշակ արքայ Հայոց

Շապուհ արքայ Պարսից և ասէ. Եթէ հաճ եմք ես և դու ընդ միմեանս՝ եկ և տեսցուք զմիմեանս, և յայսմհետէ իբրև զհայր և զորդի լիցուք ընդ միմեանս։ Ապա թէ ոչ տեսանես դու զիս, խնդրես զպատերազմ ի մէջ իմ և ի մէջ քո։ Իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն ուխտիւ ի նմանէն, զի յայսմհետէ անկասկած երթիցէ առ նա։ Եւ նա ետ բերել ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, և յղեաց։ Զի թէ իցէ և զայն երդման ևս զհետ ոչ եկեսցէ՝ ապա կազմ լիցի տալ ճակատս պատերազմի ի մէջ իւրեանց։ Իսկ զայն ևս յորժամ տեսին և լուան ամենայն մարդիկն երկրին Հայոց՝ ստիպեցին, բռնազբօսեցին զիւրեանց թագաւորն զԱրշակ և շտապեցին, զի յարիցէ գնասցէ երթիցէ յանդիման լիցի թագաւորին Պարսից Շապհոյ։ Յայնմհետէ թէ կամաւ կամաւ, և թէ ոչ կամաւ՝ յարեաւ թագաւորն Հայոց Արշակ, առ ընդ իւր զզօրավարն սպարապետն Հայոց զդայեակն իւր, խաղաց գնաց յերկրէն Հայոց յերկիրն Պարսից առ Շապուհ, չոգաւ յանդիման եղև թագաւորին։ Իբրև տեսին զնոսա՝ արկին զերկոսեանն, զարքայն Արշակ և զսպարապետն Վասակ, և պահէին զնոսա արձակ ի մէջ ազատագունդ փուշտիպան զօրացն։ Եւ կոչեաց արքայ Շապուհ զարքայ Արշակ, և իբրև զծառայ իւր պատուհասեաց զնա. և նա յանցաւոր և մահապարտ զանձն իւր առ նա համարեցաւ։ Դարձեալ անդրէն ի նոյն գունդ փուշտիպանաց եդուն զԱրշակ արքայ ի պահեստ» (Բուզանդ. Դ. ԾԲ, ԾԳ.)։

**38.** Բուզանդ, հաւատալո՞վ թէ իբրև զրոյց՝ կը դնէ սա պատմութիւնը։ Շապուհ որպէս թէ ժողովելով իւր կախարդներն, յետ պատմելոյ նոցա զիւր երախտիքն առ Արշակ և զնորա ապերախտութիւնն և ստերդմնութիւն՝ կը հարցանէ նոցա, թէ Արշակ պիտի մնա՞յ հաւատարիմ թէ ոչ, եթէ արձակէ զնա յերկիր իւր։ Եւ նոքա խորհուրդ կու տան նմա տալ բերել Հայաստանէ հող և սափորով ջուր, և վրանին յատակին կէսը ծածկել այն հողով և զջուրն հեղուլ հողին վրայ. ապա տանել զԱրշակ, առանց գիտելոյ նորա, այն հողին վրայ։ Եթէ Արշակ գալով այն հողին վրայ խօսի խրոխտանօք՝ նշան է թէ պիտի ապստամբի, եթէ երթայ յերկիր իւր։ Շապուհ կը կատարէ կախարդներուն խորհուրդը. և տեսնելով թէ Արշակ ամբարտաւանութեամբ կը խրոխտայ Շապհոյ դէմ՝ կը ղրկէ զնա Անյուշ կոչուած բերդն ի Խուժաստան։ Ահա Բուզանդայ պատմութիւնն. «Ապա կոչեաց թագաւորն Պարսից Շապուհ զդիւթսն և զաստեղագէտսն և զքաւդեայսն. խօսէր ընդ նոսա և ասէր, եթէ Ես բազում անգամ կամեցայ սիրել զԱրշակ արքայ Հայոց, և նա·

համակ անարգեաց զիս։ Եդի ընդ նմա ուխտ խաղաղութեան, և երդուաւ ինձ յիւրեանց օրէնս քրիստոնէութեանն ի գլխաւորութիւն այնմ զոր Աւետարանն կոչեն. նախ այն երդմանն ստեաց։ Ես բիւր բարիս խորհեցայ որպէս հայր որդւոյ կատարել նմա, և նա չար ընդ բարւոյ հատոյց։ Կոչեցի զերիցունս եկեղեցւոյն Տիզբոն քաղաքի, և կարծեցի, թէ նոքա նենգութեամբ ինչ ետուն նմա զերդումն և ետուն ինձ ստել։ Եւ պատուհասեալ զնոսա որպէս զմահապարտս՝ ետու հրաման եւթանասուն զնոսա ի մի գուբ փողոտել, և զուսումնակիցս նոցա հանել ընդ սուր. Զաւետարանն յոր երդուաւ Արշակ արքայ, որ է գլխաւորութիւն ուսմանց նոցա քրիստոնէութեանն՝ կապեցի շղթայիւք և կայ ի գանձի իմում։ Բայց բանքն Մարեայ երիցու յուշ եղեն ինձ, զի ասէր. Մեք արդարութեամբ տուաք նմա զերդումն. բայց եթէ նա ստեաց՝ նոյն Աւետարանն ածէ զնա առ ոտս ձեր։ Ահա բանքն արդարութեամբ կատարեցան։ Այսչափ ամք են, զի Արեաց տուեալ ընդ Արշակայ ճակատս՝ յաղթել և ոչ մի ամ ոչ կարացաք, և ելեալ եկեալ է նա ոտիւք իւրովք։ Բայց թէ գիտէի, եթէ յայսմհետէ կայցէ յուխտին իմում և ի հնազանդութեան՝ բարեաւ ուխտիւ, մեծապէս մեծարանօք արձակէի զնա խաղաղութեամբ յիւր աշխարհն։ Իսկ քաւդեայքն ետուն նմա պատասխանի և ասեն. Թող մեզ այսօր, և վաղիւն պատասխանի արասցուք քեզ։ Իսկ ի վաղիւ անդր ժողովեցան եկին ամենայն քաւդեայքն և աստեղագէտքն, և ասեն ցարքայն. Այժմ զի եկեալ է առ քեզ թագաւորն Հայոց Արշակ, զիա՞րդ խօսի ընդ քեզ, կամ զի՞նչ ձայն ածէ, կամ զիա՞րդ ունի զանձն։ Ասէ արքայն. Իբրև զմի ի ծառայից իմոց համարի զինքն, հող ոտից իմոց ջանայ լինել։ Ասեն նոքա. Ա՛ռ արա՛ զոր ասեմքս քեզ. պահեա դու զնոսա աստէն, և առաքեա դու դեսպանս յերկիրն Հայոց, և տուր բերել անտի հող ի սահմանացն Հայոց իբրև բեռինս երկուս, և կահոյր մի ջուր։ Եւ հրաման տացես հարկանել զկէս խորանի յատակ ի բերեալ հողոյն Հայոց, և առցես քեզէն զձեռանէ արքային Հայոց Արշակայ, և տարցես նախ յայն տեղ որ բնակ իսկ իցէ հողն, և հարցցես ցնա բանս։ Եւ դարձեալ առցես դու զձեռանէ նորա և տարցես ի հայատակսն ի հարեալ հողոյն, և լուիցես դու բանս ի նմանէ, և ապա գիտասցես դու, եթէ կա՛յ յուխտն քո և պահէ՛ զդաշինս քո թէ ոչ, յետ արձակելոյ քո զնա ի Հայս։ Ապա թէ ի վերայ հայ հողոյն խիստ ինչ բարբառեսցի՝ գիտասջիր զի որ օր հասանէ յերկիրն Հայոց՝ զնոյն ձայն ածէ ընդ քեզ, և զնոյն պատերազմ նորոգէ ընդ քեզ, զնոյն ճակատս և զնոյն թշնամութիւն յուզէ։ Թագաւորն Պարսից զայս լուեալ ի

քաւդէից՝ տաճիկ ուղտուք արձակէ ի Հայս առս զհողոյ և զջրոյ, զի եկեսցեն բերցեն նմա զհմայսն։ Եւ ընդ սակաւ աւուրս եկին բերին զայն ինչ զորմէ յղեացն։ Ապա հրաման տայր թագաւորն Շապուհ զկէս յատակին իւրոյ խորանին հարկանել ի բերեալ հողոյն Հայոց, և զջուրն ցանել ի վերայ նորա, և զկէսն ի նոյն հողն զիւրոյ բնակութեան երկրին թողուլ։ Եւ ետ ածել զԱրշակ արքայ Հայոց զառաջև իւրով, և զայլ մարդիկն ի բաց հրամայեաց կացուցանել, և զձեռանէ առեալ շրջէր ճեմելով։ Եւ երթեւեկս առեալ ընդ խորանն՝ ասէ ցնա յորժամ ի պարսիկ հողոյն ի վերայ ճեմէին, թէ Ընդէ՞ր եղեր իմ թշնամի, Արշակ արքայ Հայոց. զի ես որպէս զորդի սիրեցի զքեզ, և կամեցայ տալ քեզ զդուստր իմ ի կնութիւն, և որդի ինձ առնել զքեզ. իսկ դու խստացար ընդ իս, և քովք կամօք առանց իմոց կամաց եղեր ընդ իս թշնամի, և պատերազմեցար ընդ իս։ Ասէ Արշակ արքայ, թէ Մեղայ քեզ և յանցեայ. զի ես եկի և կոտորեցի յաղթեցի թշնամեաց քոց, և ակն ունէի ի քէն պարգև կենաց, և թշնամիք իմ հրապուրեցին զիս, և արկին երկիւղուկս ի քէն, և փախուցին ի քէն։ Եւ երդումն իմ զոր երդուայ քեզ՝ յառաջ ած զիս, և եկի աւասիկ առաջի քո։ Եւ աւասիկ ծառայ քո ի ձեռս քո կամ. զինչ և պէտք է քեզ՝ արա զիս, զինչ և կամ իցէ. սպան զիս, զի ես ծառայ քո առ քեզ կարի յանցաւոր եմ, մահապարտ եմ։ Իսկ Շապուհ արքայ առեալ զձեռանէ նորա՝ շրջէր ճեմելով. ի չքմեղս առեալ զնա ածէր ի հայակողմն ի հողն հարեալ յատակն։ Իսկ իբրև յայն տեղի հասանէր և զհայ հողն կոխէր՝ մեծամեծս ըմբոստացեալ հպարտացեալ՝ այլ ձայն շրջէր. սկսանէր խօսել և ասել. Ի բաց կաց յինէն, ծառայ չարագործ, տիրացեալ տերանցն քոց. այլ ոչ թողից քեզ և որդւոց քոց զվրէժ նախնեացն իմոց, և զմահն Արտաւանայ արքայի։ Զի այժմիկ ձեր, ծառայից՝ զմեր, տերանց ձերոց զքարձ կալեալ է. բայց ոչ թողից, եթէ ոչ տեղիդ մեր առ մեզ եկեսցէ։ Իսկ դարձեալ առնոյր զձեռանէ, դարձեալ տանէր յայն հող Պարսից. ապա աշխարէր Արշակ զասացեալսն, խոնարհէր բուռն հարկանէր զոտից նորա, մեծապէսապաշխարելով զզջմամբ զասացեալ բանսն։ Իսկ յորժամ առեալ զձեռանէ զնա տանէր ի հայ հողն՝ ևս խստագոյն քան զառաջինսն բարբառէր. իսկ դարձեալ միւսանգամ հանէր յայնմ հողոյն, բանիւք յապաշխարութիւն դառնայր։ Յայգուէ մինչև երեկոյն այնպէս շատ փորձ փորձեաց զնա. զի իբրև ի վերայ հարեալ հողոյն տանէր՝ խստացեալ ամբարտաւանէր. իսկ իբրև ի վերայ բուն գետնոյն յատակին կայր՝ ի զղջումն դառնայր։ Իսկ իբրև երեկոյ եղև, ժամ ընթրեաց թագաւորին Պարսից, քանզի սովորու-

թիւն էր Հայոց թագաւորին բազմական անդէն ընդ նմին առ նմա ի նորին տախտին արկանել բազմական. օրէնք էին զի թագաւորն Պարսից և թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին ի միում գահոյս։ Իսկ այն օր նախ զտող բազմականացն որ անդն էին՝ զամենեցունց կարգեցին. հուսկ յետոյ զկնի ամենեցունց ի ներքոյ բոլորին զԱրշակայ բազմականն առնէին, ուր զհայ հողն յատակն հարեալ էր։ Նախ ամենեքեան իբրև բազմեցան յիւրաքանչիւր չափու՝ յետոյածէին բազմեցուցանէին զարքայն Արշակ։ Արդ եկաց բազմեալ ուռուցեալ վայր մի. ապա յոտն եկաց, ասէ ցթագաւորն Շապուհ. Ի՛մ այդ տեղի, ուր դուդ ես բազմեալ. յոտն կաց այդի, թող ես այդր բազմեցայց, զի տեղի ազգի մերոյ ա՛յդ լեալ է. ապա եթէ յաշխարհն իմ հասից՝ մեծամեծ վրէժս խնդրեցից ի քէն» (Բուզ. Դ. ԾԴ.)։

**39.** Այս պատմութիւն ապաքէն առասպել է. սակայն ճշմարիտ է, թէ Արշակ դրուեցաւ Անյուշ բերդը, և Վասակ սպանուեց մորթազերծ.—«Ապա հրաման տայր Շապուհ արքայ Պարսից բերել շղթայս և արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել զնա յԱնդմըշն զոր Անուշ բերդն կոչեն, և սնդեալ զնա մինչև անդէն մեռցի։ Եւ եղև ի վաղիւ անդր ետ հրաման Շապուհ արքայ ածել զառաջեաւ իւր զՎասակ Մամիկոնեան զզօրավարն սպարապետն Հայոց Մեծաց. սկսաւ պատուհասել զնա։ Քանզի էր Վասակ անձամբ փոքրիկ՝ ասէ ցնա արքայն Պարսից Շապուհ. Աղուէս, դո՛ւ էիր խանգարիչ, որ այսչափ աշխատ արարեր զմեզ. դո՛ւ ես այն որ կոտորեցեր զԱրիս այսչափ ամս. և զի՞ գործես, զմահ աղուեսու սպանից զքեզ։ Իսկ Վասակ տուեալ պատասխանի ասէ. Այժմ քո տեսեալ զիս անձամբս փոքրիկ՝ ոչ առեր զչափ մեծութեան իմոյ. զի ցայժմ ես քեզ առիւծ էի, և արդ աղուէս։ Բայց մինչ ես Վասակն էի՝ ես սկայ էի. մի ոտնս ի միոյ լերին կայր, և միւս ոտնս իմ ի միոյ լերին կայր. յորժամ յաջ ոտնս յենուի՝ զաջ լեառն ընդ գետին տանէի. յորժամ ի ձախ ոտնն յենուի, զձախ լեառն ընդ գետին տանէի։ Ապա հարցանէր թագաւորն Պարսից Շապուհ և ասէ. Ասէ, տուր ինձ գիտել, ո՛վ են լերինքն այնոքիկ, զորս դուն ընդ ունջ տանէիր։ Եւ ասէ Վասակ. լերինքն երկուք՝ մի դու էիր, և մի՝ թագաւորն Յունաց։ Մինչ տուեալ էր ինձ Աստուծոյ՝ զքեզ ընդ գետին տանէի և զթագաւորն Յունաց, մինչ օրհնութիւն հօրն մերոյ Ներսիսի հագուցեալ էր ի վերայ մեր, և Աստուծոյ զմեզ ի ձեռանէ չէր թողեալ. մինչ զնորա բանն արարաք և խրատ նորա եկաց առ մեզ՝ գիտացաք տալ քեզ խրատ, մինչև մեզէն աչօք բացօք

անկաք ի խորխորատ։ Արդ զինչ կամիս՝ արա։ Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդն յԱնդմըշն, ուր արգելլին իսկ զթագաւորն Արշակ (Բուզ. Դ. ԾԴ.)։

**40.** Բուզանդայ Դ. դպրութեան վերջին չորս գլուխներն կուտան մեզ սոսկալի աղետից և հալածանաց շար մի ի ձեռն Շապհոյ և երկուց ուրացելոց—Մերուժանայ Արծրունւոյ և Վահանայ Մամիկոնենի, աղէտք՝ զորս չէ մարթ առանց արտասուաց ընթեռնուլ։ Շապուհ յետ այնպէս խստիւ պատուհասելոյ զԱրշակ և զքաջ սպարապետն նորա Վասակ, զմին մշտնջենաւոր բանտարկութեամբ և զմիւսն չարաչար մահուամբ՝ կը ղրկէ ի Հայս երկու անուանի զօրավար, զԶիկ և զԿարէն բազմութեամբ զօրաց, քանդել կործանել զերկիրն և գերել բնակիչներն, ինչպէս կ'երևի՝ ստիպելով զնոսա ընդունել զկրօնս Պարսից։ Յետ երեքտասանամսեայ պաշարման կ'առնուի Արտագերից բերդն, ուր ապաւինած էր թագուհին Փառանձեմ սպասելով իւր որդւոյն Պապայ, որ էր պատանդ ի Յոյնս և պիտի գայր հռոմայեցի զօրօք ազատել զերկիրն։ Յետ այնորիկ, կամ միևնոյն ժամանակ, կ'առնուին և կը քանդուին երևելի երևելի քաղաքներ, որպէս Արտաշատ, Վաղարշապատ, Երուանդաշատ, Զարեհաւան, Զարիշատ, Վան, Նախճաւան, և անթիւ մարդիկ կը տարուին գերի։ Իսկ տիկինն Փառանձեմ տարուելով ի Պարսկաստան՝ կը մատնուի անառակ զինուորաց բռնաբարութեան հրամանաւ Շապհոյ ի թշնամանս թագաւորին և ազգին.—«Ապա արձակեաց արքայն Պարսից Շապուհ ի վերայ աշխարհին Հայոց երկուս ոմանս յիշխանաց անտի իւրոց, միումն Զիկ անուն և միւսումն Կարէն, բազմութեամբ զօրաց. զի եկեսցեն բրեսցեն քանդեսցեն զաշխարհն Հայոց։ Իբրև ետես տիկին աշխարհին Հայոց, կինն Արշակայ թագաւորին Փառանձեմ, զզօրս թագաւորին Պարսից, եթէ եկին լցին զաշխարհս Հայոց՝ առեալ ընդ իւր մարդիկ, ազատս, ընտիրս, սպառազէնս պատերազմողս՝ հանդերձ նոքօք դիմեաց եմուտ ի բերդն Արտագերից, որ յերկրին Արշարունեաց, յերեսաց զօրացն Պարսից։ Ապա եկին հասին ամենայն զօրքն Պարսից, շուրջ զբերդաւն նստէին, պահ արկանէին, պատեցին պաշարեցին։ Իսկ նոքա ի ներքս ամրացեալք՝ յուսային ի տեղւոյն ամրութիւնն, և զօրն ղակիշ ածեալ նստէին արտաքուստ շուրջ զձորօքն։ Եւ նստան շուրջ զբերդաւն ամիսս երեքտասան, և առնուլ զբերդն ոչ կարացին, զի կարի ամուր էր տեղին։ Աւերեցին քանդեցին զերկիրն ամենայն. երանէին առնուին աւար, շուրջ ի գաւառացն և յաշխարհացն ածէին զգերի մարդկանն և զանասնոց ի ղակիշն իւրեանց.

ապրուստ բերէին համբարս և ուտէին, և զբերդն պաշարեալ պահէին։ Իսկ Պապ որդին Արշակայ ոչ դիպեցաւ անդ ի Հայոց աշխարհին, զի առ թագաւորին Յունաց դիպեցաւ։

**41.** «Իբրև զայս ամենայն տեսին ազատագունդ բանակն Հայոց՝ չոգան խնդրել իւրեանց թիկունս օգնականութեան, և էր նոցա զօրագլուխ Մուշեղ որդին Վասակայ սպարապետին։ Եւ չոգան նոքա առ իւրեանց արքայորդին. ընդ թագաւորին Յունաց խօսէին, հաւանեցուցանէին զնա թիկունք լինել իւրեանց։ Իսկ յերկիրն Հայոց ստէպ առաքէին դեսպանս առ տիկին աշխարհին առ Փառանձեմ, զի ժուժկալ լինիցի բերդին և մի ձեռս տացէ ի Պարսիկս։ Եւ դեսպանք ստէպ ստէպ յորդւոյ նորա ի Պապայ զմիմեանց կնի ի շաբաթու շաբաթու եկեալ հասանէին և գաղտ ընդ գաղտնի դուռն ուրեմն մեքենաւորութեամբ ի բերդն մտանէին, տային քաջալերս տիկնոջն։ Եւ յերկարեաց ի բերդին ամիսս երեքտասան պաշարումն։ Այլ որք գային և երթային՝ ստէպ ստէպ գային թէ Պինդ կաց, զի հասեալ է Պապ որդի քո և գունդ կայսերական ի թիկունս օգնականութեան։ Եւ յերկարեաց խրախոյսն որ հասանէր, զի ասէին, Վայրիկ մի ևս, սակաւիկ մի ևս կալցիս ժոյժ՝ և ահա հասեալ է օգնականութիւն։ Եւ եղև յետ չորեքտասաներորդ ամսեանն հարուածք յԱստուծոյ հասին ի վերայ գաղթականին բերդնորդեացն, զի մահ անկաւ ի վերայ նոցա որք ի բերդին էին, զի ի Տեառնէ հասին պատուհասք։ Առաջի տիկնոջն Փառանձեմայ ուտէին և ըմպէին և ուրախ լինէին որք էին ի տաճարին. յանկարծակի ի միում ժամու հարիւր այր, և ի միւսում՝ երկերիւր, և էր զի հինգհարիւր այր մեռան ի բազմականին յորժամ բազմեալ կային. և օր ըստ օրէ սատակէին։ Յորժամ սկսան՝ զամիս մի ոչ յերկարեաց, զի սատակեցան առ հասարակ, և էին արք իբրև մետասան հազար, և կանայք իբրև վեց հազար։ Մինչ էր ի բերդին Փառանձեմ տիկին երկու նաժշտօք՝ եկն եմուտ գաղտ ի ներքս ի բերդն Հայր մարդպետ ներքինին, և թշնամանեաց զտիկինն մեծապէս իբրև զբոզ մի, սկսաւ դնել թշնամանս ազգին Արշակունեաց, զի վատախորհուրդք են, վատանշանք, կորուսին զաշխարհս ևս. յերաւանց ընդ ձեզ այդ և այլ զի անցցէ. ապա ել գաղտուկ և փախեաւ։

**42.** «Իսկ տիկինն Փառանձեմ իբրև ետես եթէ միայն մնացի՝ եբաց զդուռն բերդին, և թողացոյց զզօրսն Պարսից մտանել ի բերդն։ Ելանէին ի վեր, գերէին զգանձս թագաւորին Հայոց որ կային ի բերդին, և սկսան կրել իջուցանել զամենայն գանձսն որ կային ի բերդին։ Զինն տիւ և զինն գիշեր համակ իջուցին զոր գտին յԱրտագերսն բերդին, և հանդերձ տիկնաւն խաղացուցին։ Եւ յետ այ-

սորիկ եկին ի քաղաքն մեծ յԱրտաշատ, և առին զնա և կործանեցին զպարիսպ նորա. առին անտի զգանձս մթերեալս որ կային, և գերեցին զամենայն քաղաքն։ Եւ խաղացուցին յԱրտաշատ քաղաքէ ինն հազար տուն երդ հրեայս, զոր ածեալն էր գերի Տիգրանայ արքայի Արշակունւոյ յերկրէն Պաղեստինացւոց, և քառասուն (հազար) երդ հայ։ Եւ զբազում շինուածս քաղաքին հրձիգ արարին զփայտակերտն, և զքարակերտն քանդեցին, և զպարիսպն ըստ նմին օրինակի։ Եւ եղև իբրև ածին ժողովեցին զամենայն գերին զքաղաքին ի մի վայր և անցուցին ըստ Տափերն կամուրջ, և առնէին համար գերւոյն, ի մէջ չերտափակ զօրացն պատէին՝ ասէին զօրագլուխքն Պարսից ցԶուիթ երէց քաղաքին Արտաշատու. Ելեալ ի միջոյ գերւոյդ՝ երթ գնա դու յո՛ պէտք է քեզ։ Եւ ոչ առնոյր զայս յանձն երէցն Զուիթն, այլ ասէր. Ցո 'զխաշինդ տանիք՝ և զհովիւս տարայք. զի ոչ է մարթ հովուի թողուլ զխաշն իւր, այլ պարտ է հովուին դնել զանձն ի վերայ ոչխարին իւրոյ։ Եւ զայս ասացեալ եմուտ ի գերութիւնն, և խաղաց ի գերութիւն ընդ իւրում ժողովրդեանն յերկիրն Պարսից։

Առնուին զՎաղարշապատ քաղաք. քանդէին բրէին զքաղաքն, ի հիմանց տապալէին, և խաղացուցանէին յայնմ ևս քաղաքէ իննևտասն երդս հազար։ Ընդ ամենայն քաղաքս ոչ թողին ամենևին շինած, զի զամենայն տապալէին, քակեալ քանդէին. և ընդ ամենայն երկիրն ասպատակ սփռեալ՝ զամենայն այր ի չափ հասեալ կոտորէին, զկանայս և զորդիս ի գերութիւն վարէին. և զբերդս ամենայն թագաւորին Հայոց կալան, և լցեալ բազում ամբարօք՝ բերդակալս թողուին։ Առնուին և զմեծ քաղաքն զԵրուանդաշատ, և խաղացուցանէին անտի երդս քսան հազար հայ, և երդս երեսուն հազար հրեայ, և զքաղաքն ի հիմանց տապալեալ բրեալ յատակէին։ Ապա առնուին և զքաղաքն Բագրևանդայ Զարեհաւան, և խաղացուցանէին անտի հինգ հազար երդ հայ և ութ հազար երդ հրեայ, և զքաղաքն ի հիմանց տապալէին յատակէին։ Առնուին և զքաղաքն մեծ Զարիշատ որ էր ի գաւառին յԱղոյհովտի. խաղացուցանէին չորեքտասան հազար երդ հրեայ, և տասն հազար երդ հայս, և զնա ի հիմանց քանդեալ ապականէին։ Առին և զամուր քաղաքն Վան որ է ի գաւառին Տոսբայ, և հրձիգ արարեալ քանդէին զհիմունս նորա, և խաղացուցանէին անտի երդս հինգ հազար հայ, ևութևտասն հազար երդս հրեայ։ Զայս ամենայն բազմութիւն հրէից զոր գերեցին տարան յերկրէն Հայոց՝ ածեալ էր յերկրէն Պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց Տիգրանայ ի ժամանակին յորժամ գերեաց նա և ած ի Հայս զքահանայապետն հրէից զՀիւրկանոս զառաջին

ժամանակաւ։ Եւ էած մեծ արքայն Տիգրան զամենայն զհրէութիւնն զայն բնակեցոյց ի քաղաքսն Հայոց յիւրում դարուն ի ժամանակին։ Իսկ յայսմ ժամանակի աւերեցին զքաղաքսն և գերեցին զբնակեալսն անդ. և զամենայն երկիրն Հայոց և զամենայն գաւառսն ընդ նմին գերեալ, խաղացուցեալ և զայլ գերութիւնս գաւառաց գաւառաց, կողմանց կողմանց, փորի փորի, զաշխարհի աշխարհի՝ ածին ժողովեցին ի քաղաքն Նախճաւան, զի անդ էր զօրաժողով իւրեանց զօրացն։ Ապա առին և զնա քանդեցին. անտի երդս հայս երկուս հազար, և հրեայս երդս վեշտասան հազարս անտի խաղացուցին գնացուցին ամենայն գերութեամբն հանդերձ։ Եւ անդէն յերկրին Հայոց ոստիկանս թողին և վերակացուս, ի ծառայութիւն մատնել զմնացորդս երկրին, և ինքեանք զտիկինն Փառանձեմ առեալ հանդերձ գանձիւքն և բազմութեամբ գերեօքն յերկիրն Պարսից խաղացուցանէին, և գնացեալք երթային տանէին հասուցանէին յերկիրն Պարսից առ Շապուհ արքայն։ Եւ եղև իբրև չոգան տարան զտիկինն Փառանձեմ յերկիրն Պարսից, և զայլ ամենայն գերութիւնն Հայոց և զգանձսն, և կալան առաջի թագաւորին՝ շնորհ մեծ ունէր թագաւորն Պարսից իւրոց զօրավարացն։ Եւ իբրև կամեցաւ թագաւորն Պարսից Շապուհ թշնամանս առնել ազգին աշխարհին Հայոց և թագաւորութեանն՝ ետ հրաման ժողովել զամենայն զզօրս իւր և զմեծամեծս իւր և զփոքունս և զամենայն մարդիկ աշխարհին իւրոյ որ ինքն իշխէր, և ի մէջ ամբոխին ածել զտիկինն Հայոց զՓառանձեմն։ Եւ հրամայեաց ի հրապարակին իմն առնել հրապոյրս մեքենայից, յոր հրամայեաց զկինն արկանել, և արձակել տիկնոջն Փառանձեմայ ի խառնակութիւն պոռնկութեանն անասնական պղծութեանն։ Այսպէս սատակեցին զտիկինն Փառանձեմ։ Իսկ զայլ գերին զամենայն տարան բնակեցուցին, ո՛ր յԱսորեստան, ո՛ր յերկիրն Խուժաստանի» (Բուզ. Դ. ԾԵ.)։

**43.** Ի պատմութեան աստ ևս Բուզանդայ կան ապաքէն աւելաբանութիւնք կամ չափազանցութիւնք։ Չափազանց է ասել, թէ Պարսիկք այնչափ քաղաքներն զօրս առին՝ «բրեցին քանդեցին, ի հիմանց տապալեցին», «ընդ ամենայն քաղաքս չթողին ամենևին շինած». «զամենայն այր ի չափ հասեալ կոտորեցին». սակայն մեծ էր աւերումն, և կոտորածն անհնարին։ Չափազանց է նոյնպէս ասել, թէ Շապուհ «ժողովեաց զամենայն զօրս իւր և զամենայն մարդիկ աշխարհին իւրոյ» ի զնին այն լկտի տեսարանին. այլ չիք տարակոյս թէ եթէ Շապուհ արդարև այնպիսի օրինակաւ (որ չէ անհաւատալի, նայելով ի վաւաշոտ բարս Սասանեան ազգին) կամեցաւ խայտառակել զտիկինն՝ հաւանական է թէ ջանաց ըստ կարի բազմա-

ցուցանել հանդիսատեսներն ի թշնամանս Արշակայ և Հայոց։ Գալով ի թիւ հրեայ գերելոց, զորս քան զՀայոցն աւելի կը դնէ Բուզանդ՝ թէպէտ, գիտելով թուոյ մասին Բուզանդայ չափազանցութիւնը, հարկ չէ առնուլ ըստ ամենայն ճշմարտութեան՝ չէ սակայն անհաւանական, թէ հրեայ գաղթականք (որ անտարակոյս իբրև արուեստագէտ ժողովուրդ բերուած էին նախ քան զՏիգրան և մանաւանդ առ Տիգրանաւ, որոյ ձեռագէտ գաղթականօք իւր քաղաքներն շէնցունելու սովորութիւնը գիտենք Տիգրանակերտի պատմութենէն), չէին սակաւաթիւ ի Հայս, և Պարսիկք այս դիտմամբ մանաւանդ ընտրեցին տանել առաւել հրեայ քան հայ։

Շապուհ յետ տալոյ զինուորաց խայտառակել զՓառանձեմ՝ ինքըն անձամբ կը գործէ զնոյն խայտառակութիւն։ Երթալով ի Հայս, առաջնորդ ունելով զՎահան և զՄերուժան՝ զորս մի անգամ կը գտնէ յարանց, իմա յայնց որ չէին ուրացած քրիստոնէութիւնը՝ կու տայ առնել կոխան ոտից փղաց (այսպէս սովոր էին առնել աբեղեան բռնաւորք, այսինքն կապտաղեալ փիղեր արձակել գերեաց վրայ զորս կամէին բազմութեամբ սպանանել. տես Գ. Մակաբ.), իսկ զկանայս և զմանկունս հանել ի սայլացից։ Իսկ զազատ կանանին, այսինքն զկանայս Նախարարաց որ փախած էին, ժողովելով ի Զարեհաւան, ուր կը թուի կար ասպարէզ մեծ ձիարշաւի՝ կու տայ շարել զնոսա հոլանի ատտի և անտի ասպարիզին. իսկ ինքն ձիով անցնելով արշաւակի՝ զորս և կամի կու տայ մուծանել ի վրան իւր որ կանգնած էր ասպարիզի մօտ։ Օրինակ յկտութեան անարժան այնպիսի թագաւորի որպիսի էր Շապուհ, միանգամայն յաւիտենական նախատինք Սասանեան թագաւորաց մանաւանդ քան Հայոց, յորոց ի թշնամանս կը կարծէր գործել Շապուհ այն պիղծ վրէժխնդրութիւնը.—«Ապա յետ այսորիկ խաղաց գնաց թագաւորն Պարսից Շապուհ ամենայն իշխանութեամբ զօրաց իւրոց և չոգաւ եհ յերկիրն Հայոց. և առաջնորդ ունէր ընդ իւր զՎահան ի Մամիկոնեան տոհմէն և զՄերուժան յԱրծրունեաց տոհմէն։ Հասեալ ասպատակէին յերկրին Հայոց։ Բազումք ի նախարարացն Հայոց թողեալ զկանայս իւրեանց և զորդիս և զընտանիս փախեան, ընդ այս և ընդ այն գնացին։ Իսկ զամենայն կանայս նախարարացն Հայոց որ թողին և փախեան՝ ասպատակն ժողովէր. և ածին զնոսա առ Շապուհ արքայ Պարսից։ Իբրև էր բանակն Շապհոյ ի գաւառին Բագրևանդայ յաւերս քաղաքին Զարեհաւանի, զոր յառաջնումն եկեալ զօրքն Պարսից աւերեցին՝ ածին ժողովեցին առաջի թագաւորին Պարսից զամենայն գերին մնացորդաց աշխարհին Հայոց։ Ապա հրաման տայր թագաւորն Պարսից Շապուհ զամե-

նայն այր ի չափ հասեալ կոխան առնել փղաց, և զամենայն կին և զմանուկ հանել ընդ ցից սայլից։ Եւ զկանայս ազատացն և նախարարացն զփախուցելոցն հրաման տայր ածել յասպարէզն որ էր ի Զարեհվան քաղաքի։ Եւ հրաման տայր հոլանել զամենայն ազատ կանանին և նստուցանել աստի անտի ասպարիսին, և ինքն Շապուհ արքայ հեծեալ ի ձի՝ շաւաղի անցանէր առ կանանովն. և որ յակն գայի՝ մի մի ի նոցանէ պղծեալ ի խառնակութիւն տանէր առ ինքն։ Քանզի մօտ յասպարէզն հարեալ էր խորանն յոր առեալ մտանէր գործել զանօրէնութիւնն. և այնպէս զբազում աւուրս առնէր զայն ընդ կանայսն» (Բուզ. Դ. ԾԲ.)։ Շապուհ ևս աւելի խստութեամբ գնաց մանաւանդ ընդ ազգին Սիւնեաց ի վրէժ Անդովկայ նահապետին, հօր Փառանձեմայ, քանզի նա էր գլխաւոր պատերազմին, որ եղաւ ի մէջ կայսեր և Շապհոյ ի սկզբան թագաւորութեանն Արշակայ.—«Եւ զազգն Սիւնեաց տոհմին զամենայն զայր ի չափ հասեալ կոտորեցին, և զկանայս սպանին, և զամենայն մանր մանկտին ներքինիս հրամայէր առնել և խաղացուցանել յերկիրն Պարսից։ Եւ առնէր զայս ամենայն վասն վրիժուցն Անդովկայ, որ եղև առաջնորդ պատերազմին ընդ Ներսեհ արքայ Պարսից» (Բուզ. Անդ)։ Շապուհ յետ գործելոյ այսչափ չարիս, նախարարաց կիները զորս այնպէս թշնամանեց չարաչար՝ դնել տուաւ բերդեր, և պատուիրեց սպանանել զնոսա՝ եթէ արք նոցա չդառնային յետս։ Ապա թողլով զԶիկն և զԿարէն զօրօք ի Հայս, և զբանտարկեալսն յանձնելով Մերուժանայ և Վահանայ՝ գնաց յԱտրպատական.—«Եւ տայր հրաման Շապուհ արքայ Պարսից զամուր ամուր տեղիսն Հայոց բերդս շինել, հրամայեաց և բերդակալս կացուցանել։ Եւ զազատ կանանին անդէն ի բերդեանն բաշխէր և թողոյր, զի եթէ ոչ արք նոցա եկեսցեն նմա ի ծառայութիւն՝ սպանցեն զկանայս նոցա բերդակալքն առ որս եթող զնոսա։ Եւ եթող յաշխարհին զԶիկն և զԿարէնն և զնոցա իշխանս զօրօք բազմօք. և զիշխանութիւն մնացորդացն ետ ի ձեռս Վահանայ և Մերուժանայ, և ինքն գնաց յԱտրպատական» (Բուզ. Անդ)։

**44.** Ինչպէս կը տեսնուի Ներսէսի խրատէն առ նախարարս՝ մտանել ի ծառայութիւն Շապհոյ կը նշանակէր լռելեայն ուրանալ զքրիստոնէութիւն և ընդունել զկրօնս Պարսից. ուստի չէք տարակոյս, թէ շատք դարձան, թէպէտ ակամայ, ի կրօնս Պարսից, և որք չառին զայս յանձն՝ մեռան վկայական մահուամբ։ Իբրև այսպիսիք յանուանէ կը յիշուին Զուիթ երէցն Արտաշատու, և ի կանանց նախարարաց ոչ սակաւք։ Նշանաւոր եղաւ ի սոսա մանաւանդ Համազասպուհի, քոյր Վարդանայ Մամիկոնենի (ոչ մեծին

Վարդանայ), կին Գարեգնի Ռշտունւոյ, որ թողլով զՀամազասպուհի փախած էր ի Ցոյնս։

Բուզանդայ Դ. դպրութեան ԾԶ. և ԾԷ. գլուխներն ունին Զուիթայ երէցու վկայաբանութիւնն, այսինքն նորա հարցափորձն առաջի Շապհոյ և մարտիրոսական մահը։ Ըստ Բուզանդայ՝ Շապուհ տեսնելով զԶուիթ սեաւ մօրուօք և սպիտակ հերով՝ համարեցաւ զնա կախարդ։ Երէցն յետ ցուցանելոյ համառօտիւ այն երևութին բնական պատճառն՝ ասէ համարձակ, թէ զի՞ փոյթ էր նմա հերաց և մօրուաց սպիտակութիւնն կամ սևութիւն. ինչ որ պէտի հրամայէր՝ թող հրամայէ։ Շապուհ տալով հրաման դնել զնա այն օր ի դէպահոջ, յաջորդ օրը կոչելով զնա յատեան՝ կ'առաջարկէ ընդունել զկրօնս Պարսից, և ի չառնուլ նորա յանձն՝ կը ղրկուի սպանման տեղին, ուր յետ յաղօթս կալոյ համառօտիւ՝ կը գլխատուի.—«Իբրև չոգան տարան յերկիրն Պարսից զամենայն գերութիւն Հայոց, և զԶուիթ երէց Արտաշատ քաղաքի ունէին կապանօք առաջի թագաւորին Պարսից Շապհոյ. Նայէր թագաւորն և տեսանէր զերէցն Զուիթ այր բարձր և անձնեայ, և ի տիոց մանուկ, և հեր գլխոյն ալեօրեալ էին, այլ մուրուքն դեռ տակաւին սեաւ ևս կային։ Յայնժամ զառաջինն խօսել սկսաւ Շապուհ և ասէ. Տեսանէ՞ք զառնդ զայդր զչարութիւն, քանզի յայտ է. ի հերաց այտի երևի թէ կախարդ է. զի հերքն սպիտակ են և մուրուքն սեաւ։ Իսկ երիցուն տուեալ պատասխանի ասէ. Թէ քեզ պէտ իցէ, այլ զինչ կամիս խօսել և առնել՝ խօսեաց. այլ վասն այդորիկ գիտեա զի յիրաւունս սպիտակացեալ են նախ հերքս, զի բազում աւուրբք երէց են, գոնեա հնգետասան ամօք քան զմուրուս նախաբոյսք են։ Իսկ թագաւորն հրաման տայր մինչև ի վաղիւն պահել զնա. իսկ ի վաղիւն հրաման տայր ածել ի հրապարակն շըղթայիւք։ Եւ ելին ոստիկանք արքունի հարցանել, եթէ իցէ յանձն առցէ պաշտել զօրէնս մոգութեանն՝ ոչ մեռցի։ Իսկ նա ոչ առնոյր յանձն. այլ կամեցեալ մեռանել խնդութեամբ վասն Աստուծոյ՝ երթայր ի տեղի մահուան, և աղաչեաց զվերակացուս իւրոյ մահուանն, զի թողացուսցեն նմա սակաւ մի կալ յաղօթս։ Եւ մատուցեալ յառաջագոյն՝ եդ ծունր և ասէ»։ Հոս կը դնէ Բուզանդ երիցուն աղօթքը։ «Եւ իբրև զայս ամենայն ասաց՝ բազում մարդիկ ամբոխի ժողովեալ էին (ի քրիստոնէից). ասացին զամէնն։ Ապա զայրացեալ վերակացուք սպանողութեանն, թէ ընդէր այնչափ երկար թողացուցին նմա խօսել, տագնապաւ ի տեղի մահուն հասուցանէին։ Իսկ նա մեծաւ խնդութեամբ կարկառեալ զպարանոցն, վճարէր ի սուսերէն» (Բուզ. Դ. ԾԶ, ԾԷ.)։

Զօրինակ ողորմ մահուան Համազասպուհեայ, զոր իբրև մարտիրոս կը տօնէ Հայաստանեայց եկեղեցին՝ մանր կը պատմէ Բուզանդ Դ. դպրութեան ԾԹ. գլխով, որով և կը փակէ իւր պատմութեան Դ. դպրութիւնը։ Շապուհ, ինչպէս տեսանք՝ Մերուժանայ և Վահանայ յանձնած էր Հայոց մնացորդը։ Այս երկու ուրացեալք մեծ փութով կը ջանային տարածել ի Հայս կրակապաշտութիւնը և կը նեղէին զքրիստոնեայս, մանաւանդ փախուցեալ նախարարաց կանանին որ դրուած էին այլևայլ բերդեր։ Թշուառ կանայք ստիպուեցան հրամանաւ նոցա ուրանալ քրիստոնէութիւնը, և որք միանգամ չզիջան այս հրամանին՝ սպանուեցան չարաչար, բայց թէ որպիսի մահուամբ՝ չէ յայտ։ Համազասպուհու համար միայն կը պատմէ Բուզանդ, թէ Վանայ բերդին աշտարակէն կախուելով մերկ գլխիվայր՝ մեռաւ, և մնաց այնպէս, մինչև հալեցաւ մարմինն և ոսկրոտին թափեցան, և կին մի որ էր դայեակ նորա, կենալով ի ներքոյ աշտարակին՝ կը ժողովէր մեռելոյն ոսկրներն իւր հանդերձին գոգը, և ի վախճանի տարաւ թաղեց զնոսա.—«Վահանն Մամիկոնեան և Մերուժանն Արծրունի, սոքա երկոքեան որք պիղծք անօրէնք էին, ապստամբեալք յուխտէ աստուածպաշտութեանն՝ զանաստուած մազդեզանց աղանդն յանձն առեալ պաշտէին. սկսան այնուհետև յերկրին Հայոց աւերել զեկեղեցիս, զտեղիս աղօթից քրիստոնէից յամենայն կողմանս Հայոց, գաւառաց գաւառաց և կողմանց կողմանց։ Եւ նեղէին զբազում մարդիկ զոր ի բուռն արկանէին՝ թողուլ զաստուածպաշտութիւն և ի պաշտօն դառնալ մազդեզանցն։ Եւ յետ այսորիկ տային հրաման Վահանն և Մերուժանն զամենայն կանայս փախուցելոցն զնախարարացն որ թողինն և գնացին. տային հրաման ի բերդեանն զի նեղեսցեն զնոսա՝ դարձուցանել յօրէնս մազդեզանց. եթէ ոչ առնուցուն յանձն՝ սատակեսցեն զամենեսեան չարաչար։ Եւ բերդակալեանն յորժամ զայն հրաման ընկալան՝ ամենայն ոք ո՛ ոք առ ումեք էին՝ նեղեցին զնոսա ըստ հրամանին տուելոյ։ Ապա իբրև ոչ մի ոք յանձն առնուին ուրանալ ի քրիստոնէութենէն՝ չարամահ սպանանէին զամենեսեան յամենայն ի բերդսն յորս տուեալ էր զնոսա անդ։ Իսկ Վահանայ էր քոյրաթիւ ի Մամիկոնեան տոհմէն, քոյր Վարդանայ, Համազասպուհի. և էր նա կին Գարեգնի Ռշտունեաց գաւառին։ Զսա եթող և փախեաւ Գարեգին այր իւր ի ժամանակին յորում եկն Շապուհ արքայ Պարսից յերկիրն Հայոց. Իսկ զտիկինն Ռշտունեաց ետուն ի միջնաբերդն Վան բերդն, որ էր քաղաք ի Տոսբ գաւառին։ Իսկ անօրէնն Վահան և Մերուժանն հրաման տային բերդակալին զի նեղեսցէ զկինն. եթէ ոչ առցէ

յանձն զօրէնս մազդեզանցն՝ տային հրաման կախել զնա զբարձր աշտարակէն և սպանանել։ Իբրև ոչ առնոյր յանձն Համազասպուհի պահել զօրէնս մազդեզանցն՝ հանէին ի բարձր աշտարակն, որ կայր ի վերայ բարձր գահուն քարին, որ հայէր ի կողմն ծովակին ի գետոյ կուսէ. և մերկացուցին զնա իբրև ի մօրէ, և արկեալ կապ զոտիցն՝ գլխիվայր կախեցին զնա զբարձուէն կուսէ, և այնպէս մեռաւ ի կախաղանին։ Եւ էր նա սպիտակ մարմնով և պայծառ տեսանելովն. կայր կախեալ յերեւոյթ տեսիլ նշաւակի, և փաղփէր մարմինն ի բարձուէն զոր օրինակ ձիւն սպիտակութեամբն, և բազում մարդիկ ժողովէին տեսանել օր ըստ օրէ, զի իբրև սքանչելի ինչ երևէր յաշխարհին։ Ցայս տեսիլ տիկնոջն Համազասպուհեայ՝ էառ կին մի դայեակն նորին, ագաւ նա պարեգօտ մի զոր անակիւղս կոչեն, և էած գօտի ընդ մէջ իւր, և կայր առ բարձր գահուն քարին ի ներքոյ աշտալակին՝ զորմէ կախեալ էր զսանն իւր, մինչ կողոպտեցան ամենայն մարմինք դիոյն։ Եւ որչափ ի վայր վայրէին ոսկերքն՝ նա յիւր ծոցն ժողովէր բովանդակ զամենայն զոսկերս սանին, և առեալ գնաց յիւրսն» (Բուզ. Դ. ԾԹ.)։

Ըստ Բուզանդայ՝ Սամուէլ որդի Վահանայ և Որմիզդխտոյ քեռ Տալհոյ, սպանանելով զհայր և զմայր իւր՝ կը փախչի ի Խաղտիս.—«Այնչափ չար էին արքն երկոքին (Մերուժան և Վահան)՝ զի անգամ իւրեանց ումեք ոչ ողորմէին, այլ անխնայութեամբ դատէին զօտարս և զիւրեանց ընդանիս։ Ատրուշանս շինէին ի բազում տեղիս, և զմարդիկ հնազանդէին օրինացն մազդեզանց, և բազում յիւրեանց սեպհականսն շինէին ատրուշանս, և զորդիս և զազգայինս իւրեանց տային յուսումն մազդեզանցն։ Ապա որդի մի էր Վահանայ, անուն Սամուէլ, եհար սատակեաց սա զՎահան զհայր իւր և զՈրմիզդուխտ զմայր իւր, զքոյր Տայհոյ Պարսից թագաւորին, և ինքն փախստական լինէր յերկիրն Խաղտեաց» (Բուզ. Անդ)։

## Դ. Ի ՊԱՊԱՅ ՄԻՆՉԵՒ Ի ՎԱԽՃԱՆ ՏԷՐՈՒԹԵԱՆՆ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ:

*1. Նոր պատգամաւորութիւն առ Վաղէս. թագաւորելն Պապայ: 2. Բուզանդ զՊապայ անլաքանութեամբ: 3. Գործք Պապայ. Մուշեղ սպարապետ եւ գործք նորա: 4. Նշանաւոր ճակատն ի Ձիրաւ: 5. Խորհուրդ մատնութեան: 6. Մահն Արշակայ: 7. Նուաճումն ապստամբութեանց: 8. Դատաստան զԲուզանդայ: 9. Մահ մեծին Ներսիսի: 10. Պատճառք ամբաստանութեանց զՊապայ: 11. Վկայութիւն Ամմիանու: 12. Դաւ ընդդէմ Պապայ եւ փախուստ նորա: 13. Ամմիանոս ջատագով Պապայ: 14. Անմիտ զըրպարտութիւն եւ դաւաճանութիւն. Դատաստան Ամմիանու. Գաթըրճեան: 15. Արդիւնք սպանման Պապայ: 16. Անհարկութիւնք ի Բուզանդայ առ այս. Վարազդատ: 17. Հնարք Մուշեղի յապահովութիւն Հայոց: 18. Սպանումն Մուշեղի դաւով: 19. Մանուէլ Մամիկոնեան. Վարազդատ կը մերժուի: 20. Գարեգին Ռշտունի: 21. Գրաւումն միոյ մասին Հայոց. Սուրէն: 22. Սուրէն կը մերժուի քսութեամբ Մերուժանայ. Գործք Մանուէլի. Պատերազմ ընդ Պարսս. Մերուժան կ'սպանուի: 23. Արշակ եւ Վաղարշակ կը թագաւորեն. Մահ Մանուելի: 24. Բաժանումն Հայաստանի. Խոսրով ի բաժնին Պարսից: 25. Վախճան գրոցն Բուզանդայ: 26. Համառօտ քաղաքական տեսութիւն:*

**1.** Ինչպէս արդէն տեսանք՝ պատգամաւորութիւնն, զոր ըստ Բուզանդայ (Դ. Ե.) յղեցին Հայք առ Վաղէս ի թագաւորել նորա (364)՝ չեղաւ զառաջինն յաջող, և չկարէր իսկ լինել, քանզի դաշնադրութիւնն Յովիանու դեռ նոր էր, և Վաղէս էր զբաղեալ ի նուաճել զապստամբութիւնն յարեւմուտս։ Ուստի և Հայք մնալով անօգնական, թէպէտ ընդդիմացան ամս իբրև չորս կամ հինգ քաջութեամբ ընդդէմ ահագին զօրութեանն Պարսից՝ ընկճեցան ի վախճանի։ Նախարարք որ մնացած էին հաւատարիմ իւրեանց երկրին և կրօնից՝ կը ղրկեն առ Վաղէս (368) նոր պատգամաւորութիւն գլխաւորութեամբ Մուշեղի, որդւոյ Վասակայ՝ խնդրել ի կայսերէ թագաւորեցուցանել զորդին Արշակայ զՊապ, որ էր Պատանդ առ կայսեր.—«Յետ այսր ամենայնի (այսինքն այնչափ աղետից և սպանմանց աշխարհին) Մուշեղ որդի Վասակայ ժողովեաց զամենայն ազատագունդ մարդկանն որ միանգամ մնացեալ էին, և չոգան հանդերձ նոքօք առ թագաւորն Յունաց, և եցոյց զպաղատանս աշխարհին Հայոց և զամենայն անցս տառապանաց որ անցեալ էր ընդ նոսա, և խնդրեաց ի կայսերէն զՊապ զորդի Արշակայ թագաւոր ի վերայ Հայոց աշխարհին» (Բուզ. Ե. Ա.)։ Զպատմութիւն անցից Պապայ յառաջ քան զթագաւորելն, այն է զփա-

խուստն ի բերդէն, զերթն առ կայսր, զընդունելութիւն նորա պատուով, զառաքումն այսրէն և զխուսափումն յերեսաց Շապհոյ՝ յիշեցինք արդէն. զայն ևս ծանուցինք, թէ Բուզանդ ՚ի թողլով Պապայ թագաւորելոյն սկզբան պարագաներն՝ կը բերէ ի մէջ զարգիւնս պատգամաւորութեանն Հայոց, այն է զգալուստն Տերենտի զօրօք ի Հայս, անձամբ թագաւորեցուցանել զորդին Արշակայ զՊապ.—«Մեծ թագաւորն Յունաց թագաւորեցոյց զՊապ զորդին Արշակայ ի վերայ աշխարհին Հայոց, որպէս և խնդրեացն նա ի նմանէ, և մեծապէս թիկունք լինէր արքայն Յունաց, և զՏերենտ անուն ստրատելատն և զԱդէ ումն կոմս արձակէր ընդ արքային Պապայ յերկիրն Հայոց» (Բուզ. Անդ)։ Ապա կը պատմէ մանր և ընդ երկար՝ ինչ որ դիպեցաւ յետ այնորիկ, այն է զհաշտելն Ներսիսի որ հեռացած էր բանակէն առ Արշակաւ, զկարգելն Մուշեղի սպարապետ փոխանակ հօրն, զքաջութիւն նորա Պարսից դէմ պատերազմներուն մէջ, զնուաճելն ապստամբ գաւառաց ձեռամբ նորին Մուշեղի, զմահն Ներսիսի, Պապայ ներքին գործերն, ի վերջոյ զսպանումն Պապայ դաւաճանութեամբ Յունաց, և այլ բազում ինչ զորս պիտի յիշենք կարգաւ. բայց յիշենք նախ՝ ինչ որ կը պատմէ Բուզանդ զանձնէ Պապայ և զառանձինն կենաց նորա։

2. Ըստ Բուզանդայ՝ որպէս թէ Փառանձեմ մայրն Պապայ նուիրած էր զնա ի ծննդեանն դիւաց, որք մարմնաւոր տեսլեամբ իբրև զօձս կը պատէին զնովաւ, և որոց թելադրութեամբ կը գործէր Պապ ամէն տեսակ պղծութիւն։ Դևք էին միշտ զանձամբ և զանկողնով նորա. ի մտանել Ներսիսի և Խադայ միայն՝ առ ահի լինէին աներևոյթք.—«Պապ որդին Արշակայ ծնաւ ի մօրէն Փառանձեմայ Սիւնոյ, որ էր լեալ կին Գնելոյն, զոր եսպան արքայն Արշակ և առ զկին նորա Փառանձեմ իւր կին, և ծնաւ ի նմանէ որդի որ կոչեցաւն Պապ։ Եւ եղև իբրև ծնաւ զնա մայրն իւր, քանզի անօրէն մարդ էր և ամենևին յԱստուծոյ ոչ երկնչէր՝ նուիրեաց զնա դիւաց. և բնակեցին դևք բազումք ի մանուկն և վարէին զնա ըստ կամաց իւրեանց։ Սնաւ և աճեաց և գործէր զժեղս—զպոռնկութիւն, զպղծութիւն արուագիտութեան և զանասնագիտութիւն և զազրալի գարշութիւն, բայց կարի զարուագիտութիւն։ Դարձեալ ինքն իգանայր այլոց, և այսպէս մմկեալ թաւալեալ էր։ Եւ երբեմն իբրև զգաց մայր նորա զարուագիտութիւնն, և ոչ կարացեալ համբերել պարսաւանացն վատանուանութեանն՝ ասէ ցսենեկապան որդւոյն իւրոյ, թէ յորժամ նա խնդրեսցէ ի պղծութիւն զարսն ընդ որս սովորն է անկանել՝ դուք զիս ի ներքս կոչեսջիք։ Յորժամ պատանեակն Պապ ինքն ընդ անկողին մտեալ խնդրէր

զարսն ի պղծութիւն՝ եմուտ մայր նորա և նստաւ զառաջեաւ իւր որդւոյն։ Ապա սկսաւ ճչել վայել պատանեակն և ասէ ցմայր իւր. Յարկցես գնասցես ի բաց, զի մեռանիմ խորովիմ կսկծիմ պայթիմ, թէ ոչ յարկցես գնասցես ի տանէս։ Իսկ մայրն ասէ, թէ Աչ գըտացեալ ելից ի տանէ աստի։ Իսկ նա հաղ քան զհաղ ճչէր, բազմացուցանէր զվայելն։ Իսկ մայրն նայեցեալ տեսանէր աչօք իւրովք օձս սպիտակս, զի պատեալք էին զգահոյիցն ոտամբք և ճապատէին ի վերայ պատանեկին Պապայ, մինչդեռ ընգողմնեալ էր նա. կայր ի մահիճսն, վայէր և խնդրէր զպատանեակսն ընդ որս սովորն էր գիտանալ։ Իսկ մայրն գիտացեալ յիշեաց զայն, որոց ի ծննդեանն նուիրեաց զորդին իւր. գիտաց. թէ նոքա են որ ի կերպարանս օձիցն ճապատէին զորդւովն իւրով, յարտասուս հարեալ ասաց. Վա՜յ ինձ, որդեակ իմ, զի քեզ տագնապ էր, և ես ոչ գիտէի։ Յարուցեալ գնաց եթող զտեղին՝ կատարել զպէտս ցանկութեանն։ Եւ այսպէս դիւօք վարեալ, յայսպիսի գործս զամենայն աւուրս կենաց իւրոց ըմբռնեալ Պապն որդին Արշակայ, մինչև եհաս ի թագաւորութիւնն, մինչև ի մահ իւր» (Բուզ. Դ. ԽԴ.)։ Դարձեալ այլուր (Ե. ԻԲ). «Այլ թագաւորն Պապ, մինչդեռ տղայիկ այն ինչ ծնեալ էր ի մօրէ իւրմէ՝ յայնժամ ձօնեաց զնա դիւաց անօրէն մայրն Փառանձեմ, և վասն այնորիկ լի էր դիւօք ի տղայութենէ իւրմէ։ Վասն զի հանապազ զկամս դիւաց առնէր, վասն այսորիկ և բըժշկութիւն իսկ ոչ կամէր գտանել, զի հանապազ վարժէր զանձն իւր դիւօք, և կախարդանօք երևէին դևքն ի նմա, և ամենայն մարդ զդևսն ի նմա աչօք բացօք տեսանէին։ Զի յորժամ մարդիկ հանապազօր յայգորել ելեալ մտանէին՝ տեսանէին զի յօձից կերպարանս ելանէին ի ծոցոյն Պապայ 'թագաւորին և պատէին զուսովք նորա, և ամենեքեան ոյք տեսանէին զնա՝ երկնչէին ի նըմանէ ի հուպ երթալ։ Իսկ նա պատասխանի տայր մարդկանն ասելով, թէ Մի՛ երկնչիք, զի սոքա իմ են։ Զի բազում համբարք դիւաց համբարեալ էին ի նմա և յամենայն ժամ ամենայն մարդոյ երևէր այս, որ զամ մի զթագաւորն տեսանէին. բայց յորժամ հայրապետն Ներսէս մտանէր առաջի նորա կամ սուրբ եպիսկոպոսն Խադ՝ դևքն չերևեալ աներևոյթ լինէին»։ Գրեթէ զնոյն կարծիս ունէին Յոյնք, այսինքն թէ Պապ էր անհնարին կախարդ։ Վաղեսի անգամ, որ էր սնապաշտ և կը հաւատար, նա՛ կը դողար իսկ յանուանէ կախարդութեան՝ հաւատացուցած էին, թէ Պապ էր դիւթ և կարող իսկ վնասելոյ կենաց կայսեր, այս պատճառաւ կը խնդրէր Վաղէս բռնել զկեանս նորա։ Բուզանդայ այս պատմութիւնն ոչ այլ իմիք կարէ ընծայուիլ՝ եթէ ոչ տղայամիտ դիւրա-

հաւանութեան հեղինակին։ Նուիրել ի մանկութենէ դիւաց, երևել նոցա օձակերպ, նա կախարդութեան անունն իսկ բաւական է յանդիմանել առասպելը։ Ըստ մեզ ոչինչ ընդհատ առասպել է միւս լկտի ամբաստանութիւնն, և այնու մանաւանդ յայտնի է՝ զի դեւաց բռնութեան կ'ընծայուի գործը։ Ցառնելն Պապայ ընդդէմ կղերական գեղծմանց ինչ տուած է անտարակոյս ժամանակին մոլեռանդներուն՝ իբրև դիւամոլ և պիղծ վատահամբաւել բարեկարգիչ թագաւորն։ Սակաւ մի յետոյ պիտի տեսնենք զՊապ ամբաստանեալ նաև իբրև սպանող Ներսէսի։

**3.** Գանք այժմ ի բուն պատմութիւն Պապայ։ Առաջին գործ Պապայ յետ թագաւորելոյն հռոմէական զօրութեամբ՝ կը թուի լեալ կարգել զՄուշեղ, զիւր բարերար և ազգին՝ ի սպարապետութիւն փոխանակ հօր նորա Վասակայ, և ջանալ հաշտեցուցանել զՆերսէս, որ ի ժամանակէ անտի մահուն Գնելոյ հեռացած էր բանակէն, այսինքն յարքունեաց։ Մուշեղ տասն հազար ընտիր սպառազինօք երթալով իբրև յառաջապահ կը վանէ զՊարսիկս որ կային ի գեղձի՝ մինչև յԱտրպատական, կ'առնու Գարօնից բերդն ուր կային գանձք Արշակունեաց, կ'աւերէ ատրուշաններ՝ ուր և կը հանդիպի նոցա, և երևելի երևելի մարդիկ ի Պարսից զորս միանգամ կ'ըմբռնէ՝ կու տայ մորթել և լնուլ խոտով, և այնպէս կախել զպարսպաց ի վրէժ նմանօրինակ մահուան հօր իւրոյ ի Շապհոյ. և Ներսէս կ'սկսի միւսանգամ իւր նորոգութիւններն.—«Եկին հասին (Տերենտ և Ադէ Հռոմայեցի զօրօք), և Մուշեղ լինէր զօրավար սպարապետ Հայոց փոխանակ Վասակայ հօր իւրոյ։ Եւ գային ի մի վայր ժողովէին ամենայն ցրուեալք փախուցեալք թագուցեալք որ էին յերկրին Հայոց. գային և ի մի վայր բովանդակէին, և լինէին ի խնդիր սրբոյ մեծի հայրապետին Ներսէսի, զի գիտէին թէ նա կարող է աղօթս առնել և խնդրել յԱստուծոյ վասն շինութեան ամենայն աշխարհին Հայոց։ Ապա մեծաւ ջանիւ հազիւ հաւանեցուցին զնա երթալ ընդ նոսա ի բանակն արքունի. զի յաւուրց ժամանակին ի մահուանէ Գնելոյ մինչև յայն ժամանակն թագաւորութեանն Պապայ ոչ էր երթեալ նա ի բանակն արքունի։ Մեծաւ աղաչանօք տարան զնա ընդ ինքեանս, և նա էր նոցա վերակացու և խրատտու։ Ապա կարգէր կազմէր յօրինէր Մուշեղ սպարապետ զամենայն զգունդս Հայոց զօրացն, և առնէր հանդէս ամենայն զօրացն գնդին որ հասին ի ձեռս նորա տասն հազար։ Եւ ածէր զամենայն հանդէսն կարգեալս և պատրաստեալս վառեալս ի պատերազմ, զդրօշս փողփողեալս և նշանս արձակեալս, և ցուցանէր զհանդէս զօրացն Հայոց սպարապետն Մուշեղ առաջի իւրեանց թագաւորին Պապայ և մեծի

քահանայապետին Ներսէսի, և առաջի Տերենտի և Ադէի զօրագլխացն Յունաց։ Եւ մեծ շնորհակալութիւն առնէր նմա թագաւորն Հայոց Պապ և մեծամեծ պարգևս շնորհէր զօրավարին Մուշեղի, և սոյնպէս զօրագլուխքն Հոռոմոց շնորհակալ լինէին նմա. և եպիսկոպոսապետն Ներսէս օրհնէր զզօրավարն Մուշեղ, որ յառաջեալ հանդերձ Հայոց գնդաւն առաջապահ անցանէր առաջի թագաւորին Պապայ և զօրացն Յունաց։ Ի Դարանաղեաց գաւառին լինեալ յարձակեցաւ. հասանէր ի միջնաշխարհն Հայոց, սպանանէր զզօրագլուխսն Պարսից զԿարէնն և Զիկն, և մինչև ի բուն ի սահմանսն ի Գանձակ Ատրպատականի զերկիրն յիւր վտարեալ բռնացեալ ունէր։ Եւ եկն եմուտ թագաւորն Պապ յերկիրն Հայոց, և թագաւորեաց ի վերայ նորա, և թափեաց յինքն զամուր ամուր բերդիցն զոր կալեալ էր Պարսկացն, և բերդն Դարօնից որ է յերկիրն Կոգայ, ուր կային գանձք Արշակունեացն սաստիկ յոյժ։ Քանզի դիպեցան մտերիմք բերդակալքն, զի թէպէտ ի ժամանակէն իբրև տարան զթագաւորն Հայոց զԱրշակ ի Պարսս, յայնմհետէ ժամանակէ մարտեան ընդ բերդին ընդ այնմիկ Պարսիկք՝ ոչ կարացին առնուլ, մինչև եկն Պապ թագաւորն յերկիրն Հայոց, զի պահեցաւ գանձն և եհաս ամբողջ ի Պապ թագաւորն։ Եւ զօրքն Յունաց լՆռանդ և ի Բախիշն էին։ Իսկ Մուշեղ զօրավարն Հայաստանեաց շրջէր ընդ երկիրն, և աւերէր զատրուշանսն մազդեզանցն. իսկ զմազդեզունսն զոր միանգամ ի բուռն արկին՝ զամենեսեան տայր հրաման սպարապետն Մուշեղ ունել և հրով խորովել։ Եւ զբազում բերդակալս բերդացն չարամահս առնէին, և զբազում պատուաւոր տեարս որ պատուականք էին առաջի թագաւորին Պարսից՝ ունէր ձերբակալս Մուշեղ և տայր մորթել և լնուլ խոտով և կանգնել ի վերայ պարսպացն։ Ընդ բազում տեղիս զայս առնէր ի վրէժս հօրն իւրոյ Վասակայ։ Եւ շինէին զամենայն աւերեալսն ի թշնամեացն, և զեկեղեցիսն նորոգեցին. և թագաւորութիւնն հաղ քան զհաղ նորոգէր, և իբրք ժամանակին հաղ քան զհաղ յառաջադէմ աջողէին։ Եւ սուրբն Ներսէս իմաստուն հայրապետն առաջնորդէր և լուսաւորէր, խրատէր և կարգէր և շինէր աղքատաց հանգիստ, որպէս և ինքն ի բնէ իսկ սովոր էր. և զվարս թագաւորութեանն իսկ յօրինէր ամենաբարի կրօնիւք, որպէս և տեսեալ էր իւր առ հնօքն թագաւորօք։ Եւ առաւել զկարգս եկեղեցւոյ պաշտամանն եպիսկոպոսաց, երիցանցն և սարկաւագաց, և զշինուածս եկեղեցւոյ և վկայանոցաց զամենայն նորոգեաց ուսոյց և յարդարեաց» (Բուզ. Ե. Ա.)։

Մուշեղ զօրաց թիւն հանելով մինչև քառասուն հազար, որ Հայոց սովորական զօրութիւնն էր՝ կ'երթայ պահել արևելեան,

այն է Ատրպատականի սահմանը։ Նապուհ մեծ բազմութեամբ կը խաղայ ի վերայ Հայոց, բուն բանակը թողլով ի Դավրէժ։ Մուշեղ իւր քառասուն հազարաւ կը զարնէ բանակը, Պարսից մեծամեծներէն շատերը կը բռնէ, կ'առնու թագաւորին գանձը. եթէ պարտ է հաւատալ Բուզանդայ՝ Մուշեղ կը բռնէ կանանին հանդերձ տիկնաց տիկնաւ, ի վրէժ մահուան հօր իւրոյ Պարսից երևելիներէն իբր վեց հարիւր մարդոց մորթը հանել տալով կը լնու խոտով և կը բերէ առ Պապ. բայց զկանայս Նապհոյ պատուով կ'արձակէ, և վասն այսր կը բամբասուի, նա մանաւանդ կ'ամբաստանուի իսկ առ Պապայ։ Ոչ միայն Հայոց զօրքը կը լնուն աւարաւ, այլ և Թագաւորին հետ մնացող զօրաց և Յունաց զօրավարներուն և զօրուն ևս կը հանէ Մուշեղ մասն աւարէն։ Այս յաղթութեան պատմութեան մէջ կայ արդարև աւելաբանութիւն, մանաւանդ տիկնաց տիկնոջ դերութիւնը կրնայ կարծուիլ անհաւանական, թէպէտ չէ անլուր ի պատմութեան՝ Պարսից թագաւորաց շրջեցուցանելն ի միասին զկանանին, որպէս Դարեհի, զորոյ զմայրն և զկին բռնեց Աղեքսանդր, և Ներսեհին առ Գաղերիոսիւ. զիարդ և իցէ՝ Մուշեղի նոր եռանդեամբ այս կռուին մէջ մեծ յաղթութիւն ի գլուխ տանելն չէ անհաւանական.—«Ապա Մուշեղ ստրատելատն Հայոց ընտրեաց իւր արս ընտիրս, միամիտս, ազատս, ազգայինս քառասուն հազար, միաբանս, միակամս, և կազմեաց զնոսա ձիով և թոշակաւ և զինու, և առեալ զնոսա ընդ իւր՝ երթալ նստել ի սահմանս Ատրպատճացն և պահել զաշխարհն Հայոց։ Ապա յայնմ ժամանակի կազմեաց պատրաստեցաւ Նապուհ արքայ Պարսից ամենայն կազմութեամբ զօրօք իւրովք, եկն եհաս յերկիրն Ատրպատականի, և Մերուժանն առաջնորդ գնդին բանակի նորա, և բանակն ուրեմն թագաւորին ի Թաւրէշն բնակեալ էին։ Եւ հասանէր սպարապետն զօրավարն Հայոց Մուշեղ, անկանէր ի վերայ բանակին քառասուն հազարաւ, և անդէն ձեռն ի գործ արարեալ կոտորէր։ Ապա միաձի մազապուր թագաւորն Պարսից Նապուհ ճողոպրեալ փախչէր, և զամենայն կարևան բանակին առհասարակ ընդ սուր հանէր Մուշեղ հանդերձ զօրօքն Հայոց։ Զի զբազումս կոտորէին, և զբազումս յաւագանոյն Պարսից ձերբակալս առնէին, և առնուին զգանձս թագաւորին Պարսից յաւարի, և ըմբռնէին զտիկնաց տիկինն հանդերձ այլովք կանամբքն։... Այլ Մուշեղ և ամենայն զօրքն Հայոց անչափ առին զաւար ի բանակէն Պարսից և անչափ լցան գանձիւք և ստացուածովք, և բազում աւարամասն պահէին Պապայ թագաւորին իւրեանց, և զօրացն Հայոց որ անդէն առ Թագաւորին Պապայ էին մնացեալ՝ հանին աւարամասն, և զօրավարացն

Ցունաց որ էին առ թագաւորին Հայոց. սոյնպէս և ամենայն զօրացն տային բաշխիշ ի մեծամեծ աւարացն ածելոց։ Այլ իբրև դարձան զօրքն Հայոց յաշխարհն իւրեանց՝ բազումք ի զօրացն Հայոց ամբաստանէին առ թագաւորին Պապայ զՄուշեղէ զսպարապետէն, թէ ընդէր արձակեաց զկանայս թագաւորին Պարսից զթշնամւոյն մերոյ։ Եւ թագաւորին Պապայ վասն այսր իրաց ոչինչ սակաւ լինէր թշնամութիւն ընդ Մուշեղի ի բազում ժամանակս» (Բուզ. Ե. Բ.)։

Ըստ Բուզանդայ՝ արձակելն Մուշեղի զկանանին այնպէս հաճոյ կը թուի Շապհոյ, մինչև տալ նկարել իւր բաժակին վրայ զՄուշեղ իւր ճերմակ ձիով, և կը յիշէր զնա ամէն անգամ որ կը խմէր գինի այն բաժակաւ.—«Բայց զկանայսն Շապհոյ թագաւորին Պարսից ոչ ումեք ինչ թոյլ տայր Մուշեղ զօրավարն Հայոց անարգել, այլ ժանիաւարս տայր նոցա կազմել ամենեցուն, և հանեալ արձակէր զամենեսեան զհետ առն նոցա Շապհոյ արքայի։ Եւ ի Պարսկացն ընդ նոսա արձակէր, զի երթիցեն առ Շապուհ թագաւորն Պարսից ողջս և անարատս։ Իսկ թագաւորն Պարսից զարմացեալ ընդ բարերարութիւնն Մուշեղի և ընդ քաջութիւնն և ընդ ազատութիւնն, զի ոչ արար ինչ նմա յաղագս կանանցն թշնամանս. և էր ի ժամանակին յայնմիկ երիվարն Մուշեղի ճերմակ ձի մի. իսկ թագաւորն Պարսից Շապուհ յորժամ առնոյր գինի ի մատունսն ըմպել, յորժամ ուրախութեանն իւրոյ խրախութիւնս առնէր զօրացն իւրոց՝ ասէր. Ճերմակաձին գինի արբցէ։ Եւ ետ նկարել ի տաշտի զպատկեր Մուշեղի ճերմակաւն, և ի ժամ ուրախութեանն իւրոյ դնէր զտաշտն առաջի իւր և յիշէր հանապազ զնոյն բանս ասելով, թէ Ճերմակաձին գինի արբցէ» (Բուզ. Անդ)։

Ըստ Բուզանդայ՝ Շապուհ դարձեալ կը յարձակի մեծ զօրութեամբ հանդերձ Ուռնայրիւ թագաւորաւ Աղուանից, որ կը խնդրէ ի Շապհոյ՝ պատահել Մուշեղի, Շապհոյ թողլով իւր զօրօքն ելանել ախոյեան Հռոմայեցւոց։ Տերենտ զօրավար Հռոմայեցւոց չթողուր մտանել ի ճակատ Պապայ, որ հանդերձ Ներսիսիւ կ'ելլէ ի Նպատ՝ լինել հանդիսատես կռուին, մինչ Ներսէս իբրև երկրորդ Մովսէս՝ կռուին յաջողութեան համար կ'աղօթէր։ Բարեպաշտն Մուշեղ կը բերէ զիւր զէն և զզարդ առ Ներսէս օրհնել։ Պապ, առ որում ամբաստանուած էր Մուշեղ իբրև բարեկամ Պարսից, արձակելուն համար Շապհոյ կանանին՝ կը դժկամակի թողուլ զՄուշեղ մտանել ի ճակատ, կասկածելով քաջ զօրավարին հաւատարմութենէն. այլ Ներսէս կը փարատէ թագաւորին կասկածը։ Հայք կը յաղթեն. մեծաբանն Ուռնայր կ'իյնայ ի ձեռս Մուշեղայ, որ ի մեծարանս թագաւորութեան նորա՝ կը խնայէ նմա զկեանսն։ Այս

*մեծանձն ներողութեան համար ամբաստանեալն Մուշեղ կ'արդարացունէ զանձն գեղեցիկ ջատագովութեամբ, ուր դիտելու արժանի է տիրասէր զօրավարին առաքինի ոգւոյն հետ Բուզանդայ ոճը, որ սքանչելի օրինակ է հին հայ լեզուին ընտանի պարզութեան, և Պատկայ խանդաղատական գովեստը.—«Յետ այսորիկ թագաւորն Պարսից կրկնէր լինէր զօրաժողով ամենայն ուժով և ամենայն զօրութեամբն իւրով. խաղայր գնայր ամենայն զօրօքն իւրովք, հասանէր յաշխարհն Ատրպատականի. և ինքն անդէն դադարէր սակաւուք, և զամենայն զօրացն զբազմութիւն առաքէր ի վերայ թագաւորին Պապայ ի պատերազմ։ Եւ եկեալ զօրքն Պարսից՝ ասպատակ առնէին ի միջնաշխարհն Հայոց. ապա և թագաւորն Պապ զօրաժողով առնել հրամայէր ի Բագաւանն։ Եւ զօրքն Յունաց որ էին յԵռանդին ի Բախշանն՝ ի մի վայր ժողովեցան առ թագաւորն Պապ, և ածին փոս զբանակաւն իւրեանց մօտ ի լեառնն ի Նպատ մերձ ի գետն Եփրատ, և կազմեալ պատրաստեալ կային գործոյ ճակատուն։ Ապա զօրավարն սպարապետն Հայոց Մուշեղ ժողովէր զամենայն զօրսն Հայոց, և կազմէին պատրաստութեամբ։ Իսկ իբրև զօրահատոյցն առնէր Շապուհ Պարսից թագաւորն զզօրս իւր ի վերայ աշխարհին Հայոց և ի վերայ զօրացն Յունաց՝ Ուռնայր արքայ Աղուանից անդ էր առ թագաւորին Պարսից։ Ապա յառաջ կայր և խնդրէր պարգևս Ուռնայր ի Շապհոյ արքայէն Պարսից և ասէր. Կամ լիցի քեզ, արանց քաջ, զի ինձ պարգև հրաման տացես, զի Հայոց գնդին Պապայ արքային ես ինձէն ելից իմով գնդովս նահատակ։ Զի Արեաց գնդին պատեհ է դիպան ելանել զօրացն Յունաց, իսկ ես իմով գնդաւս Հայոց իշխանացն ելից։ Եւ Շապուհ թագաւորն հաճեցաւ և շնորհ կալաւ և հրամայեաց։ Բայց Մերուժանայ Արծրունւոյ պատասխանի տուեալ Ուռնայրի ասաց. Աստ արկեր զգազիւ գիրկս. բայց թէ ժողովել կարիցես՝ մեծ զարմանք իցեն։ Եւ գաղտուկ խորհրդով զայս գուշակութիւն Մերուժանն ի ձեռն հրեշտակի առ Մուշեղ զօրավարն Հայոց հասուցանէր, թէ Գիտեա և պատրաստեաց, Մուշեղ, զի մեծաւ պարծանօք պարգև խնդրեալ է զձեզ Ուռնայրի արքային Աղուանից. արդ գիտես զինչ գործիցես։ Բայց մինչդեռ գային զօրքն Պարսից ի վերայ Հայոց, և Ուռնայր արքայ Աղուանից իւրով գնդաւն ընդ նոսա՝ խօսէր թագաւորն Աղուանից ընդ այնոսիկ որ ընդ իւրն էին, ասէր. Յանձն լիցի ձեզ յիշել. ի ժամանակի իբրև ձերբակալ արասցուք զզօրսն Յունաց՝ զբազումս ի նոցանէ ապրեցուսջիք, զի կալեալս կապեալս տարցուք յԱղուանս ի գործ կաւագործութեան գաղատոս որմաշէնս պիտոյից մերոց քաղաքաց, ապարանից և այլոց պիտոյից։*

Այլ իբրև եկին հասին մերձեցան ի միմեանս գունդքն երկոքեան, Յունացն և Պարսիցն, և հանդերձեալք խառնել ընդ միմեանս՝ ինքնին Թագաւորն Հայոց Պապ վառեցաւ կազմեցաւ պատրաստեցաւ, և կամեցաւ ի ճակատ ելանել։ Ապա չառնոյր զայն նմա յանձն Տերենտն զօրավարն Յունաց՝ թէ ի ճակատ մտցէ, այլ ասէ. Թագաւորն Յունաց զմեզ վասն քո յղեաց, եթէ Երթայք զնա պահեցէք. արդ իցէ թէ քեզ դէպ ինչ տայցէ, մեք զմեր Թագաւորն որով երեսօք տեսանեմք կամ զի՞նչ տայցեմք նմա պատասխանի եթէ իցէ, և մեք աստի առանց քո ապրեսցուք և առ մեր Թագաւորն հասանեմք, և լինիցիմք այնուհետև գլխապարտք առաջի մերոյ Թագաւորին։ Այլ արա դու, արքայ, զոր մեք ասեմք քեզ. ա՛ռ դու զեպիսկոպոսապետդ Հայոց զՆերսէս և ել նիստ ի վերայ Նպատ լերինն յամուր և յանկասկած տեղւոջ, և սուրբ արքեպիսկոպոսապետն Ներսէս արտասցէ աղօթս և խնդրեսցէ ի Տեառնէ, զի Տէր տացէ մեզ զյաղթութիւն, և ի բարձուէն նայեսցիս, և տեսջիր զջան վաստակոց պատերազմին մերոյ, զքաջութիւն և զվատութիւն՝ զոր առաջի քո գործեսցեն։ Ապա Թագաւորն Պապ հաւանեցաւ բանիցս այսոցիկ, առ ընդ իւր զմեծ քահանայապետն Ներսէս, և ելանէր նստէր ի վերայ Նպատական լերինն, և ամենայն զօրքն Յունաց և Հայոց իջանէին ի տեղի պատերազմին։ Ապա եկն և զօրավարն սպարապետն Հայոց Մուշեղ և եբեր զնշանսն իւր և զզէնն առ Ներսէս եպիսկոպոսապետն՝ զի օրհնեսցէ զնա, և իջցէ ի պատերազմ։ Եւ ի ժամանակին յայնմիկ յիշեաց Թագաւորն Պապ զհին զրոյցսն և ասէ. Յիշեցի ես զայն, զի բարեկամ է Մուշեղն Թագաւորին Պարսից Շապհոյ. Ո՞չ այդ այն Մուշեղն է, որ արձակեաց զկանայս Թագաւորին Պարսից Շապհոյ հանդերձ ժանուարօք և փաշտկանօքն. և լուեալ ևս է իմ, թէ ի Պարսիկս խօսի. արդ մի մտցէ դա ի ճակատ։ Ապա զօրավարն Հայոց Մուշեղ բարեխօս առնէր առ Թագաւորն Պապ զմեծ քահանայապետն Ներսէս։ Իսկ Թագաւորն Պապ ասէ ցեպիսկոպոսապետն Ներսէս, թէ Մի լինիր դու բարեխօս, զի իբրև իջանէ նա՝ ի զօրսն Պարսից անկանի։ Իսկ նա ևս քան զևս յաճախէր մատուցանել զբարեխօսութիւնն։ Իսկ Թագաւորն, քանզի բանիւ ինչ ոչ անցանէր զնորա ի ժամանակին յայնմիկ՝ ասէ ցՆերսէս. Կամք քո կատարեսցին. բայց նախ երդումն տուր յաջ քո, զի մեզ մի ստեսցէ, և ապա արձակեսջիր ի պատերազմ։ Ապա կոչեն զՄուշեղ զառաջեաւ արքային, և եկն եպագ երկիր արքային, և մատուցեալ բուռն հարկանէր զաջոյ եպիսկոպոսապետին Ներսէսի և երդնոյր։ Սոյնպէս և ի Թագաւորին Պապայ ձեռն արկանէր, երդնոյր և ասէր. Կեցից և

մնացից ի վերայ քո, որպէս նախնիքն իմ ի վերայ նախնեացն քոց, որպէս և հայրն իմ ի վերայ հօրն քո Արշակայ, նոյնպէս և ես ի վերայ քո, բայց միայն չարախօսացն ունկն մի դնիցես։ Ապա օրհնէր զնա քահանայապետն Հայոց Ներսէս բազում օրհնութեամբ։ Ապա թագաւորն Հայոց Պապ զերիվարն զիւր և զիւր նիզակն հրամայեաց մատուցանել առն քաջի զօրավարին Մուշեղի. այլ նա ոչ առ։ Խմովն, ասէ, գործեցից. ապա դու, արքայ, զինչ և տացես՝ ի ձեռս քո եմ։ Եւ զիւր նշանն և զզէնն մատուցանէր առ Ներսէս՝ զի օրհնեսցէ։ Եւ հեծանէր Մուշեղ իւրով գնդաւն հանդերձ, և զամենայն ճակատն Հայոց յարդարեալ յաջմէ զօրացն Յունաց, յաջում թևի նա խաղայր յառաջ։ Իսկ թագաւորն Պապ և եպիսկոպոսապետն Ներսէս կային ի վերայ Նպատ լերինն. և սուրբն Ներսէս զբազուկսն հանապազատարածս համբարձեալ յերկինս՝ խնդրէր ի Տեառնէ, զի անխայեսցէ Տէր յուխտ իւր և ի սուրբ եկեղեցիս իւր, զոր պատուական արեամբն ստացաւ, և մի տալ զժողովուրդն ի ձեռս անաստուած հեթանոսաց։ Եւ մինչդեռ նա զաղօթսն մատուցանէր առ Աստուած՝ խաղացեալ ճակատեալ իբրև զհուր ամենայն զօրքն Հայոց երթային ընդդէմ զօրացն Պարսից. իսկ գունդն Մուշեղեան յառաջեալ քան զայլ գունդսն՝ յառաջամուխ տագնապեալ երթային, մինչ զի նայէր թագաւորն և տեսանէր, զի ըստ ակն անկանէին, և ոչ երևէին թագաւորին նշանքն Մուշեղի։ Իսկ իբրև չերևել սկսան նշանքն՝ աղաղակել սկսաւ թագաւորն Պապ առ Ներսէս և ասէ. Դու խլեցեր այրեցեր զիս, զի ասացի ես, թամ, մի յղեր զայրն զայն ի գործ պատերազմիս. ահա ի զօրսն Պարսից անկաւ, և արդ մեծամեծ վնասս գործեսցէ։ Եւ ասէ եպիսկոպոսապետն Ներսէս. Մի, արքայ, մի կարծեր, զի ոչ ստէ մեզ այրն. այլ տեսցես դու քեզէն զքաջութիւն նորա։ Իսկ թագաւորն Պապ կարի ստիպէր առ եպիսկոպոսապետն Ներսէս ասել, թէ Սոէպ կաց յաղօթս և աղաչեա զՏէր մինչդեռ խառնուրդքս են։.. Այլ ի պատերազմին օգնական Աստուծոյ հասանէր ի վերայ Յունացն, և Հայաստան գնդին լինէր յաղթութիւն, և ի պարտութիւն մատնեցաւ գունդն Պարսից. դարձան ի փախուստ, ցրուեցան սփռեցան դաշտաց, լերանց բարձանց, խորոց ձորոց։ Ապա զհետ նոցա լինէին զօրքն Յունաց և Հայոց. հասանէին, զմեծ և զփոքր առհասարակ սատակէին. բայց սակաւք ի բազմաց քաջաձիք՝ փախստեայք լինէին։ Ապա զհետ լինէին փախստէիցն զօրքն Հայոց, և մինչև ի Գանձակ Ատրպատականի սահմանս Հայոց հալածէին զզօրսն Պարսից. ընդ փախուցեալսն զբազումս սատակէին զճանապարհայն։ Եւ Մուշեղ սպարապետն հարկանէր զզօրսն Պարսից ի հարուածս ան-

հնարին։ Ապա արարեալ դիպէր գնդին Ազուանից, և հասանէր Ուռնայրի արքային Ազուանից ի փախստեանն, և նիզակաբնաւն ի կառափն մատուցեալ ծեծէր բազում ասելով, թէ Այդ շնորհս կալ, զի այր թագաւոր ես և թագ ունիս. ես ոչ սպանից զայր թագաւոր, թէ կարի նեղ հասցէ ինձ։ Եւ ուժ հեծելով թողլ ետ նմա փախչել երթալ գնալ յաշխարհն Ազուանից։ Այլ յորժամ դարձան ամենայն զօրքն Հայոց՝ ոչ գոյր չափ գլխանոյն ախոյենիցն, զոր բերեալ էր առաջի թագաւորին Պապայ զօրավարն Հայոց Մուշեղ, սոյնպէս ըստ իւրաքանչիւր չափու ամենայն նախարարքն և մեծամեծքն և բովանդակ ամենայն զօրքն. և եղև մեծ յաղթութիւն յերկրին Հայոց և ի մէջ զօրացն Յունաց։ Նոյնպէս լցան բազում աւարաւ գանձուցն, զինու և զարդու, ոսկւով և արծաթով և բազում կարասեաւ, ձիովք և ջորեօք և ուղտուք զոր ինչ թափեցին, զի ոչ գոյր թիւ կամ չափ, այլ կարի բազում էր յոյժ։ Բայց ապա ամբաստան լինէին քսութեամբ առ մեծ թագաւորին Պապայ զզօրավարէն Մուշեղէ և ասէին, թէ Գիտեա, արքայ, զի մեծաւ նենգութեամբ է ընդ քեզ Մուշեղ, և քեզ մահու սպասէ. զի զքո թշնամին համակ արձակէ. զբազումս բազում անգամ ի բուռն արկեալ՝ սովոր է արձակել զթշնամիսն. զՈւռնայր արքայ արձակեալ թողլ ետ ապրել, ի բուռն արկեալ զհակառակորդս քո։ Եւ վասն այսր իրաց բազում անգամ լինէր գժտութիւն թագաւորին Պապայ ընդ զօրավարին Մուշեղի, և բազում անգամ յանդիմանէր զնա վասն այսր իրաց։ Իսկ զօրավարն Մուշեղ տայր պատասխանի թագաւորին Պապայ և ասէր. Զիմ զընգերսն զամենեսեան ես կոտորեցի. իսկ որ թագս ունէին՝ նոքա իմ ընգերք չէին, այլ քո. եկեսցես, որպէս ես զիմսն սպանի՝ դու զքոյսն. այլ իմ յայր թագաւոր ոչ ձգեալ ձեռն երբէք որ թագ ունի, և ոչ ձգեմ, և մի այլ ձգել լիցի։ Եթէ կամիս սպանանել զիս՝ սպան. այլ ես եթէ գայ ինձ ի ձեռն երբէք այր թագաւոր, որպէս եկն բազում անգամ՝ ես ոչ սպանանեմ զայր թագաւոր որ գամ մի թագ ունի, եթէ ո՛ք իսկ զիս սպանցէ։ Թագաւորն Պապ իբրև լսէր զբանս զայս՝ յարտասուս հարեալ և յարուցեալ ի գահոյիցն՝ բուռն հարկանէր զՄուշեղէ. արկանէր զնովաւ գիրկս և լայր ի վերայ պարանոցին Մուշեղի և ասէ. Մահապարտ են այնոքիկ որ իշխեն խօսել չարութիւն զՄուշեղէ, զառնէ քաջէ և զպատուականէ։ Զի այր որ ազգաւ պատուական է իբրև զմեզ, և նախնիքն դորա իբրև զնախնիսն մեր, և թողեալ նախնեացն դորա զթագաւորութիւնն Ճենաց աշխարհին եկեալ առ մեզ, ի նախնեացն մերոց ի վերայ կեցեալք և մեռեալք են. Հայր սորա ի վերայ հօրն իմոյ մեռաւ, և սա

միամտութեամբ մինչև ի մահ վաստակեալ է, և բազում անգամ Աստուած եա մեզ յաղթութիւն գովաւ. ի ձեռն զորա շնորհեցաւ բազում խաղաղութիւն. զիարդ ասեն ցիս զայս բանս, եթէ Մուշեղ քեզ մահու սպասէ։ Սա աւասիկ այր իրաւախորհ է, զի յոտար տեարսն վասն բարեկամութեան խնայեաց, զիարդ դա ի բնակ տեարս ձեռն ձգէր։ Յայնմ ժամանակի բազում պարգևս և պատիւս և բազում գիւղեան զօրավարին Մուշեղի Պապն շնորհէր» (Բուզ. Ե. Դ.)։ Եթէ գնենք ևս, թէ բանքն զոր Բուզանդ կը դնէ ի բերան Մուշեղի և Պապայ, են նորին իսկ Բուզանդայ և ոչ բուն Մուշեղի և Պապայ՝ կը մնայ դարձեալ ստոյգ, թէ արդարև ազնիւ և պատուական էր Մուշեղ և հաւատարիմ պաշտօնեայ իւր թագաւորին, քանզի Բուզանդ անտարակոյս կը խօսի ըստ բարուց առաքինի զօրավարին և ըստ բարւոք վկայութեան հասարակաց։

**4.** Պատերազմն այն, որ ինչպէս կը տեսնուի, եղաւ առ ստորոտով Նպատայ՝ էր Ձիրաւի ճակատն, զոր Խորենացին (Գ. Լէ.) կը թուի շփոթել ուրիշ երրորդ կռուոյ մը հետ, որ եղաւ Ատրպատականի սահմանին վրայ և զոր արդ պիտի պատմենք։ Ամբարտաւանութիւնն Շապհոյ չհամարելով շատ երկու մեծ ճակատներն, յորս չարաչար յաղթուեցան Պարսիկք միացեալ զօրութենէն Յունաց և Հայոց՝ կը պատրաստուէր երրորդ և աւելի մեծ կռուոյ, որ եղաւ Ատրպատականի սահմանին վրայ։ Ունայր որ Մուշեղի մեծանձնութեան պարտէր զիւր կեանս՝ կ՚իմացունէ Մուշեղի գաղտ Շապհոյ խորհուրդը և պատրաստութիւններն։ Այս պատերազմին պատմութեան մէջ ունինք ճակատ յարդարելոյ նոր իմն օրինակ, որ ըստ Բուզանդայ, յորմէ կ՚առնու և Խորենացին՝ էր այս.—ի թիկանց պատերազմիկ զօրուն Յունաց և Հայոց կացուցան սպարակիրք, այն է վահանաւորք, խիտ առ խիտ, երկայն ասպարներով իբրև պարիսպ։ Երբ նիզակաւորք Հայոց (քանզի Հայոց գլխաւոր զէնքն էր նիզակ) և կամ Յունաց լեգէոնը խոնջեալ կամ վտանգեալ կը դառնային առ վահանաւորսն՝ սոքա բանալով իւրեանց ասպարներն՝ կ՚ընդունէին զնոսա ի ներքս իբրև ի քաղաքորմ։ Այսպէս դաշնակից զօրքն ստէպ ստէպ ոգի առնլով՝ նոր զօրութեամբ կը յարձակէին ախոյեաններուն դէմ, մինչև ստիպել զնոսա խոնջեալ և պարտասեալ ի փախուստ, առանց պէտս ունելոյ հրաշալի օգնութեան հովանաւոր ամպոյն մերոց վրայ, և ոչ սաստիկ հողմոյն փչելոյ դաշնաւորաց կողմանէ Պարսից դէմ, ինչպէս կը դնէ Խորենացին։ Եթէ հաւատանք Բուզանդայ, և չէ անհաւատալի, ոչ սակաւ զարմանալի էր տիրասիրութիւնն հայ զօրաց, որ իւրեանց ախոյեաններն զորս միանգամ կը սպաննէին՝ կը նուիրէին դժբախտ

թագաւորին իւրեանց Արշակայ. տիրասիրութիւն՝ ընդ որ այնպէս ապշեալ հիացեալ էր Շապուհ՝ մինչև դրուատեօք յիշել զայն իւր նախարարներուն, ինչպէս նաև բուն իսկ պատերազմին եղանակը.— «Ապա լինէր գուշակ Մուշեղի Ուռնայր արքայ Աղուանից, յղէր առ նա հրեշտակ և տայր տեղեկութիւն, ասէր. Մեծ շնորհակալութիւն ունիմ փոխանակ զի ոչ սպաներ դու զիս, և Աստուած էած զիս ի ձեռս քո, և դու անխայեցեր. զայս սէր քո ոչ մոռացայց մինչև իցեմ ես։ Բայց գուշակեալ եմ քեզ, զի Շապուհ թագաւորն Պարսից ամենայն զօրօք իւրովք կամի գալ անկանել յանպատրաստից ի վերայ քո։ Ապա ստրատն Յունաց կազմեաց զզօրս որ ընդ իւրով ձեռամբ էին, և խաղացոյց տանել գնալ ի սահմանս Հայոց ի Գանձակէ կուսէ յԱտրպայականն տանէ։ Սոյնպէս և Մուշեղ սպարապետն գումարեաց ի մի վայր զզօրսն ամենայն Հայոց, և էին կուռ վառեալք իննսուն հազարք ընտիրք, նիզակ ի ձեռն, թող զսպարակիրս։ Եւ սոքա վաղագոյն ըստ գուշակութեանն անճապարեցին հասին յիւրեանց սահմանն, բայց միայն թագաւորն մնայ անդէն ի Հայոց աշխարհին։ Եւ եպիսկոպոսապետն Ներսէս անդէն մնայր յաշխարհին, և խնդրուածս առնէր ընդ ամենայն աշխարհին և վասն զօրացն որ էին ի պատերազմին։ Իսկ թագաւորն Պարսից Շապուհ գայր հասանէր ամենայն զօրօքն իւրովք ի տեղի պատերազմին, և գտանէր զզօրսն Յունաց և զգունդն Հայոց, զի կազմեալ պատրաստեալ էին ի գործ պատերազմին. և լինէին խառնուրդք ճակատուն։ Ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից։ Գունդք նիզակաւորացն Հայոց յորժամ յարձակեալ քաջութեամբ զախոյանս իւրեանց ի վերուստ յերիվարացն յերկիր կործանէին՝ յանդիման թագաւորին Պարսից Շապհոյ ամենայն զօրքն պատերազմիկք Հայոց ընդ ընկենուլն խրախոյս բարձեալ աղաղակէին համակ զայս բանս ասելով. Առ Արշակ քաջ։ Իսկ յորժամ զախոյեանսն ի ճակատուն յայն սպանանէին՝ նուիրէին նմա իւրեանց առաջի (Նախորդ) թագաւորին Արշակայ, ասելով. Արշակայ թագաւորին մերոյ զոհ լիջիր։ Նոյնպէս առնէին նիզակաւորքն Հայոց ազատանոյն. յորժամ ռազմ արարեալ յարձակեալ զզօրսն Պարսից առեալ ընկենուին՝ ասէին ի խրախուսելն. Առ Արշակ քաջ. իսկ յորժամ զենեալ գլխատէին զախոյեանն՝ ասէին. Արշակայ զոհ լիջիր։ Եւ լեգէոն զօրուն բազմութիւնն, այսինքն Յունաց զօրացն սպարակիրն, սոյնպէս և Հայոց սպարակիրն զթիկունս ունէին զօրացն Հայոց և Յունաց, վահանօք փակեալք զինքեամբք իբրև զամուր քաղաք ինչ ի թիկանց։ Յորժամ տարածանէին ինչ զօրքն Պարսից զզօրսն Յունաց և կամ զգունդ նիզակաւորացն Հայոց՝ սոքա ի լեգէոն վահանաւորացն

Յունաց կամ ի սպարակիրն Հայոց իբրև ի բերդ մտեալ հանգչէին։ Իսկ յորժամ ոգի առեալ սակաւ մի և անդուստ ելեալ յարձակէին՝ անթիւս ի զօրացն Պարսից ընկեցեալ առաջի իւրեանց ոտից սատակեալս գլխատէին. խրախուսելով ի նոյն բանս, յԱրշակ թագաւորն իւրեանց՝ անչափս և անթիւս ի զօրացն Պարսից կոտորեցին։ Եւ յորժամ դարձեալ սակաւիկ մի ինչ յաղթահարէին զնոսա զօրքն Պարսից՝ և նոքա իբրև ի բերդ ամուր դիմէին ի լեգէոն ի զօրսն վահանաւորս, և նոցա բացեալ զվահանսն՝ զնոսա ի մէջ առեալ փակէին։ Եւ յայնմ աւուր հարկանէին սատակէին զզօրսն Պարսից զօրքն Յունաց և Տերենտն սորատեղատ նոցա, և գունդքն Հայոց և Մուշեղ սպարապետ նոցա։ Եւ սակաւուք փախչէր Շապուհ թագաւորն Պարսից ի պատերազմէ անտի. և նոքա սահմանապահս կացուցանէին, և ինքեանք առ իւրեանց թագաւորն Պապ դառնային մեծաւ անուամբ և բարի աւարաւ և հոյակապ շքեղութեամբ» (Բուզ. Ե. Ե.)։ Բուզանդ ի վախճանի այս նկարագրին կը յարէ յաւելուած մի, որ Շապհոյ բերնէն, հանդերձ համառօտ նկարագրաւ այն պատերազմին որում ականատես էր նա՝ պանծալի գովեստ է տիրասիրութեանն հայ զօրաց.—«Այլ Շապուհ թագաւորն յորժամ յաշխարհն իշխանութեանն իւրոյ հասանէր՝ զարմացեալ ընդ քաջութիւն գնդին կուսոյն որ դիպեցաւ նմա՝ ասէր, եթէ Զարմացեալ եմ ես զոր ինչ տեսի. զի իմ ի մանկութենէ իմմէ համակ ի ճակատու և ի կռիւ մտեալ եմ, և բազում ամք են զի հասի ի թագաւորութիւն, և առանց կռուոյ ամ չեմ լեալ. բայց իմ ջերմ կռիւ զայս էր տեսեալ որ այս անգամս դիպեցաւ ինձ։ Զի յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին՝ այնպէս յարձակէին որպէս գլեառն մի բարձր և կամ որպէս զաշտարակ մի հաստաբեստ հզօր և անշարժ. և յորժամ մեք զնոսա սակաւ մի շարժէաք՝ նոքա ի լեգէոն Հոռոմոց ապաստան լինէին. և նոցա զվահանափակսն բացեալ՝ զնոսա իբրև ի քաղաքորմ պարսպաւոր ամրացեալ ընդունէին։ Եւ անտի սակաւիկ մի ոգի առեալ՝ դարձեալ ելեալք մարտնչէին, մինչև անմի զզօրսն Արեաց առնէին։ Եւ միւս ևս, որ ընդ այս եմ զարմացեալ ես, ընդ մտերմութիւն միամտութեանն հայաստան գնդին, ընդ տիրասիրութեանն։ Զի այնչափ ամք են զի տէրն նոցա Արշակ կորուսեալ է ի նոցանէն, և նոքա ի պատերազմին ի նա խրախուսէին։ Եւ յորժամ զախոյեանսն ընկենուին՝ համակ ասէին, թէ Առ Արշակ, և նա չէր ի մէջ նոցա. և նոքա առ գութ տիրասիրութեանն զոր առ բնակ տէրն իւրեանց ունէին՝ զամենայն ախոյեանսն զոր սպանանէին՝ ի նա նուիրէին։ Եւ կամ մոլեկան գունդն մուշեղեան, զի ինձ այսպէս թուէր, եթէ

հուր բոց ի գնդէն ելանիցէ և ի նշանացն, իբրև ի հուր հրդեհի՝ այնպէս անցանէր ընդ գունդն որպէս ընդ եղէգն։ Եւ այսչափ ժամանակք են, զի Արշակ տէրն նոցա ի նոցանէն կորուսեալ է, զի յԱնդմըշն բերդի կայ յերկրին Խուժաստանի, և նոքա առ գութն համարէին, թէ ի գլուխ նոցա նա իբրև թագաւոր կայցէ, և կամ ընդ նոսա արդեւք ի մէջ գնդին կայցէ ի գլուխ ճակատուն պատերազմին, և նոքա առ նմա առնիցեն պաշտօն յանդիման նորա։ Այլ, ասէր, երանի որ Հայոց գնդին տէր իցէ, այնպիսի տիրասէր և միաբան և միամիտ զօրացն» (Անդ)։

**5**. Այն ինչ վախճանած էր պատերազմն, և միացեալ բանակն կը դառնայր առ Պապ՝ Հայք զերծան ուրիշ վտանգէ ի նենգութենէն Դղակ անուն մարդպետին, զոր Տերենտ և Մուշեղ կացուցած էին յետ պատերազմին երեսուն հազարաւ սահմանապահ Ատրպատականի։ Դղակ, ըստ Բուզանդայ, գաղտ ի բանի լեալ ընդ Շապհոյ՝ կը խոստանայ նմա մատնել զՊապ հանդերձ Տերենտիւ և Մուշեղիւ, թէ ի՞նչպէս՝ չէ յայտ։ Բայց դաւաճանութիւնն պատրաստուած, և վարձատրութիւնն արդէն տրուած էր մատնչին, մինչ կ՚իմացուի խորհուրդը և կը պատմուի թագաւորին, որ կոչելով մատնիչը խոստմամբ յետս՝ կու տայ փողոտել խորագէտ հնարիւ.—«Ապա Տերենտ զօրավարն Յունաց և Մուշեղ զօրավարն Հայոց զԴղակ մարդպետ որ անուանեալ կոչէր ըստ գործոյն Հայր թագաւորին՝ թողին սահմանապահ ի Գանձակ, որ էր սահման ընդ Պարսս և ընդ Հայս։ Եւ մնացին առ նմա երեսուն հազար ընտիր ընտիրք, նիզակաւորք կուռ վառեալք պատենազէնք և զրահաւորք կազմ ամենայնիւ։ Եւ Տերենտն և Մուշեղ ամենայն զօրօք որ էին ընդ նոսա՝ գնային յաշխարհն առ թագաւորն Պապ։ Իսկ մարդպետն Դղակ յղէր հրեշտակս խորհրդով առ Շապուհ արքայն Պարսից և խոստանայր մատնել ի ձեռս նորա զթագաւորն Հայոց Պապ և զզօրավարն Յունաց զՏերենտ և զզօրավարն Հայոց զՄուշեղ, և առնոյր ի նմանէ գանձս պարգևաց սաստիկ յոյժ։ Բայց այլ մեծամեծ նախարարք որ էին առ նմա՝ գաղտ ազդ առնէին թագաւորին Պապայ—Գնէլն տէր գաւառին Անձևացեաց և այլք որ էին անդ մնացեալ։ Ապա թագաւորն Պապ յղեաց դեսպանս առ մարդպետն Դղակ, թէ զօրքդ որ են ընդ ձեռամբ քով՝ գումարեա զայդ, Գնելոյ Անձևացւոյ յանձն արասցես և վաղ եկեսցես, զի պիտոյ է ինձ յղել զքեզ առ թագաւորն Պարսից Շապուհ, զի ես մտից նմա ի ծառայութիւն։ Ապա յորժամ լսէր մարդպետն Դղակ՝ մեծապէս խնդացեալ ասէր ընդ միտս իւր, թէ Արդ դիւրին է ինձ զկամս իմ կատարել զոր խոստացայն թագաւորին Պարսից Շապհոյ, յոր-

ժամ դուրս գտի իրացս՝ յապահով յանհոգս առնել բանիւք զՊապ, և յանկարծօրէն յանպատրաստից արկանել զԹագաւորն Պարսից զգլխով նորա, և ինքն զուարճացեալ լինէր խօսնակից ի մէջ Թագաւորացն երկոցունց։ Դեսպան ձիով վաղ հասուցանէր ի գաւառն Այրարատու ի մեծ գեւղն ընչին արքունի որում Արդեանսն կոչեն, առ Թագաւորն Հայոց Պապ, և գայր յանդիման լինէր Թագաւորին։ Մեծապէս մեծարեցաւ ի նմանէն, և ի ժամ ընթրեացն հրաման ետ արքայն Պապ տանել պատմուճան ագուցանել մարդպետին Դրդակայ, և ագուցին նմա դրաստս և վարտիս։ Եւ էր հանդերձն անհեդեդ մեծութեամբն. զի խորշ զխորշիւ իջանէր, մինչ զի ոչ կարէր հանդերձել զանձն իւր, զի պատեաց զնա մեծութիւն հանդերձոյն։ Եւ ագուցեալ զպատմուճանն մեծ՝ էած զգօտին ընդ մէջ իւր զորմէ Թուրն կախէր, և սուսեր ընդ մէջ ածեալ, և խորշ ի գօտւոյ դրատիցն իջեալ՝ զԹուրն և զսուսերն ծածկէր։ Իսկ զվարտիսն զգեցեալ, և մոյկս ագուցեալ, և զնրանն յազդեր կապեալ, և ի վերայ նրանին խորշն ի վարտեացն իջեալ անկեալ ծածկէր մինչև ի սրունսն. և ոչինչ իմացաւ Դղակ Թէ այն մեծութիւն հանդերձոյն՝ չարոյ նորա իցէ այն։ Իսկ յիննն ժամ աւուրն կոչեցին զԴղակն և ասեն. Կոչեն զքեզ յընթրիս ի ներքս յարքունիս։ Իսկ յորժամ մուծին ի փող տանն յորում արքայն էր, և էր փողն ընդ երկար, բազում երդս լոյսիջոյցս էր Թողեալ, և տանէին զնա ընդ այն, կայր շուրջ սպարակիրն փակեալ սակրաւորքն, և զերդս ամենայն լուսոյն ծածկէին։ Ապա մտեալ շուրջ զնովաւ ի տեղւոջն ձգձգէին զնա սպարակիրքն։ Իսկ նա Թէպէտ տանէր ձեռն ի զէն, ի խորշխորշան հանդերձիցն պատատելոցն՝ զոր էր զգեցեալ՝ ոչ զմի զէն ոչ կարաց գտանել։ Ապա զի էր ինքն Դղակն այր մեծ և անձնեայ, քաջ հզօրուստ ոսկերօք՝ սակայն ասպարակիր մարդկանն պատեցին զնովաւ, և բարձին զնա վերըմբարձ, և տանէին զնա մինչև ի դուրս տաճարին արքունի։ Իսկ իբրև ետես Թագաւորն Թէ անդր տանին՝ ասէ. Մի՛ այսր, մի այսր, այլ մուծէք զդա ի տուն պատմուճակացն։ Քանզի ի փողին զօրք սպարակրացն մուծին զնա ի ներքս ի տունն պատմուճակացն կապեալ ձեռս յետս, այսինքն ուր Թագ արքունի դնէին։ Եւ անդէն խօսել սկսաւ Դղակն և ասէ. Ասացէք ցարքայ, գոգէք. ես այս մահու արժանի էի, բայց քեզ արժան էր զիս ի հրապարակի սպանանել, և ոչ ի տան Թագաց սպանանել, և զքո Թագդ արեամբ շաղախել։ Եւ զայս միայն ժամանեաց ասել, և անդէն ի վանսն պատմուճակացն փողոտեցին զնա, և հատին զգլուխ նորա, և հանին հարին ի նիզակի, և կանգնեցին ի հրապարակին արքունի» (Բուզ. Ե. Զ.)։

Յառաջ քան զայս, թերևս ի սկզբան իսկ թագաւորութեանն Պապայ, սպանուեցաւ միւս ևս ներքինի զոր Բուզանդ կ'անուանէ Հայր, որ էր հասարակաց անուն մարդպետաց, առանց տալոյ զբուն անուն մարդպետին։ Պատճառ սպանման սորա էր ըստ Բուզանդայ՝ թշնամանելն զտիկինն Փառանձեմ ի բերդին Արտագերից, ուր պաշարուած էր տիկինն, ինչպէս արդէն տեսանք։ Այս մարդպետն կը թուի ա՛յլ ի Կիւղակայ ներքինւոյ, որ նոյնպէս, ըստ Ամմիանոսի, մտաւ ի նոյն բերդն Արտագերից ընդ Արտաւանայ ումեմն, ոչ ի թշնամանել սակայն, այլ ի յորդորել զտիկինն լինել անձնատուր.— «Ապա պատմեցաւ Պապայ յաղագս օրերացն զոր եդ Հայր մարդպետն տիկնոջն Փառանձեմայ, մօր թագաւորին Պապայ, թշնամանս ձաղանաց ի բերդարգել պաշարմանն, զի իբրև զբոզ մի՝ այնպէս թշնամանեաց զնա ի ժամանակի իբրև եմուտ անդր գաղտուկ, և եդ սնարգանս տիկնոջն, և եկն եղ անտի և փախեաւ. ետուն զայս ամենայն զրոյց թագաւորին։ Ապա մինչդեռ մարդպետն Հայր զիւրով իշխանութեամբ շրջէր յերկրին Տարօնոյ, և Մուշեղ սպարապետն Հայոց էր ի նմին գաւառին յիւրում բերդին որում Ողական կոչեն, որ կայ ի վերայ գետոյն Եփրատայ՝ եկն եհաս մի դեսպան յարքունեն Պապայ առ զօրավարն Հայոց Մուշեղ, և ունէր առ նա հրովարտակ. և գրեալ էր ի հրովարտակին անդր հրաման առ նա, զի չարամահ սատակեսցէ զՀայր մարդպետն։ Եւ նա իբրև զայս հրամանս ընկալեալ ի ձեռն առնոյր՝ յղէր առ մարդպետն Հայր դաւով, և մեծարանաց պատճառանաւ առ ինքն կոչէր յՈղականն. և էին աւուրք ձմերայնոյ, և սաստկացեալ կցեալ էր գետն Եփրատ։ Ապա կոչեալ եղև առ նա Հայր մարդպետն իբրև ի պատիւ մեծարանաց. եկն եմուտ մարդպետն ի բերդն յՈղական։ Ետ հրաման զօրավարն Մուշեղ զօրականացն ունել զնա և մերկանալ իբրև ի մօրէ, և կապել զձեռս նորա ի ներքոյ ծնկաց նորա և իջուցանել զնա ի գետն և դնել ի վերայ սառինն կցելոյ գետոյն, և սատակեցաւ անդէն։ Եւ եղև ի վաղիւ անդր չոգան տեսին, զի ուղեղ գլխոյն ի ցրտոյն վայրեալ ի բաց իջեալ թափեալ էր ընդ քիթս նորա։ Եւ փոխանակ ի նորա տեղի հայրութեան մարդպետութեանն զԴիկղակ ոմն անուն, որ յաւուրս Արշակայ թագաւորին կամ Տիրանայ հօր նորա զամու միոջ լեալ էր ի նոյն գործ մարդպետութեանն» (Բուզ. Ե. Գ.)։

**Ե.** Արդէն պատմեցինք, թէ ինչպէս Արշակ դաւով բռնուելով ի Շապհոյ, ըստ Ամմիանու, և կամ ի հարկէ բռնադատեալ երթալ առ նա, ըստ Բուզանդայ—(երկոքին ևս ճշմարիտ են)—դըրուեցաւ ի բերդն Անյուշ։ Ամմիանոս դժբախտ թագաւորին մահը

կը պատմէ եղած սրով, «ferro poenali», առանց յայտնելու թէ ինչպէս։ Խորենացին ասէ պարզապէս, թէ «սաւուղաբար արար ընդ անձին իւրում», այսինքն եղաւ անձնասպան։ Բուզանդայ Ե. դըպրութեան Ե. գլուխն նուիրեալ է Արշակայ մահուան պատմութեան, որ է մին յեղերական դիպաց, որովք լի է մանրապատումն Բուզանդ։ Ըստ Բուզանդայ՝ Արշակայ ներքինիներէն մին, Դրաստամատն անուն, մեծամեծ քաջութիւններ գործած էր Շապհոյ պատերազմներուն մէջ Քուշանաց դէմ, մինչև ազատել զՇապուհ ի մահուանէ։ Շապուհ ի վարձ այս մեծ ծառայութեան նորա՝ հրաման կուտայ Դրաստամատայ ի դարձին ի Քուշանաց՝ խնդրել զինչ և կամէր։ Հաւատարիմ ներքինին կը խնդրէ թագաւորէն թոյլ տալ նմա երթալ տեսնել զիւր տէրն յԱնյուշ բերդին, դարման տանել նմա և մխիթարել զնա մի օր։ Ըստ Բուզանդայ՝ ծանր էր այս խնդիրն, քանզի չէր օրէն յիշեցունել թագաւորին այն բերդին մէջ բանտարկեալ զոք. բայց և այնպէս Շապուհ կը շնորհէ զխնդիր ներքինւոյն, որ երթալով ի բերդն հանդերձ փուշտիպանաւ՝ կը հանէ զԱրշակ, կը լուայ, կը դարմանէ թշուառ բանտարկեալն, կը դնէ առաջի նորա սեղան պէսպէս կերակրովք և ըմպելեօք։ Արշակ կը յիշէ իւր առաջին փառքը և վերջին թշուառութիւնը, և յանկարծ եղուկ կարդալով անձին՝ կ'առնու դանակը սեղանէն և կը մխէ սիրտը. զայն տեսնելով ներքինին՝ կը հանէ դանակը և կը մխէ իւր կողը.—«Ցայնմ ժամանակի դեռ տակաւին ևս կայր կենդանի Արշակ արքայ Հայոց յերկրին իշխանութեան թագաւորութեանն Պարսից, ի կողմանս Խուժաստանի, յԱնդմըշն բերդին. այսինքն որում Անյուշն բերդն կոչեն։ Իբրև խաղաղացաւ պատերազմն Պարսից ընդ Հայս՝ Արշակունի թագաւորն Քուշանայ որ նստէր ի Բաղխ (Բահլ) քաղաքի՝ յարոյց տալ պատերազմ ընդ Սասանականին Շապհոյ թագաւորին Պարսից։ Եւ Շապուհ թագաւորն զամենայն զզօրսն Պարսից գումարեալ խաղացոյց տալ պատերազմ ընդ նմա, և զօրս միանգամ ածեալ էր գերութիւն յերկրէն Հայոց՝ զամենայն այրուձի գումարեալ խաղացոյց ընդ ինքեան։ Ի պատերազմի անդ չորաչար տարածէին զզօրսն Պարսից զօրքն Քուշանաց. զբազումս կոտորեցին և զբազումս ձերբակալ արարին, և զկէսս փախստականս առնէին։ Ներքինի մի Դրաստամատն անուն, որ յամս Տիրանայ թագաւորին Հայոց և Արշակայ որդւոյ նորա լեալ էր իշխան Անգեղ տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին և ամենայն բերդացն արքունի որ ի կողմանս յայնս, սոյնպէս և յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ, և բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն՝ գերեալ տարեալ էր յերկիրն

Պարսից ի ժամանակին յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց։ Այս Դրաստամատ էր յայնմ ճակատու, յորում վատթարեցին Քուշանքն զՇապուհ արքայն Պարսից, և գործեաց անհնարին քաջութիւն, ապրեցոյց զՇապուհ ի մահուանէ, և զբազումս ի Քուշանաց անտի կոտորեաց, և զբազում զախոյանից զգլուխս բերէր զառաջեաւ։ Իբրև եղև յորժամ դարձաւ Շապուհ յերկիրն Ասորեստանի՝ մեծ շնորհակալութիւն առնէր ներքինւոյն Դրաստամատայն վաստակոցն, և ասէր ցնա. Խնդրեա դու ինչ յինէն. զինչ և խնդրեսցես՝ տաց քեզ և ոչ արգելից։ Եւ ասէ Դրաստամատ ցթագաւորն. Ինձ ի քէն այլ ինչ ոչ պիտի, բայց տուր ինձ հրաման, զի երթայց տեսից զբնակ տէրն իմ զԱրշակ արքայ Հայոց. և առ մի օր, իբրև ես երթայց առ նա՝ հրաման տուր արձակել զնա ի կապանացն, և ես իշխեցից լուանալ զգլուխ նորա և օծանել, և ագուցանել նմա պատմուճան, և արկանել նմա բազմականս, և դնել առաջի նորա խորտիկս, և տալ նմա գինի, և ուրախ առնել զնա արուեստականօք մի օր ճիշտ։ Եւ ասէ թագաւորն Շապուհ. Խիստ են խնդրուածքդ զոր խնդրեցեր. զի յաւուրց ժամանակաց յորմէ թագաւորութիւնս Պարսից կանգնեալ է, և բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է՝ ոչ ոք ի մարդկանէ իշխեցեալ է յիշեցուցանել՝ զոր յայնմ բերդի եդեալ զոք է թագաւորաց. և դու աւադիկ զանձն ի մահ եդիր և յիշեցուցեր զԱնյուշն. քեզ արժան էր զօգուտ քո անձինդ խնդրել—կամ աշխարհս, կամ գաւառս, կամ գանձս. բայց զի քո մեծ վաստակք են առ իս՝ զոր ինչ խնդրեցերն՝ երթ, տուեալ լիցի քեզ։ Եւ ետ նմա փուշտիպան մի հաւատարիմ, և հրովարտակ արքունի մատանեաւն, զի գնացեալ երթիցէ նա ի բերդն յԱնդմըշն, և զիարդ և կամք իցէ նորա՝ արասցէ կապելոյն Արշակայ։ Եւ չոգաւ Դրաստամատն հանդերձ փշտիպանաւն և հրովարտակաւն արքունի յԱնուշ բերդն, և ետես զտէրն բնակ. արձակեաց զնա ի կապանացն երկաթեաց, ի ձեռակապացն և յոտիցն երկաթոց և յանրոց պարանոցին շղթայից սարեացն, և լուաց զգլուխ նորա և լոգացոյց զանձն նորա, և ագոյց նմա պատմուճան ազնիւ, և էարկ նմա բազմականս և բազմեցոյց զնա, և եդ առաջի նորա ընթրիս ըստ օրինաց թագաւորաց, և եդ առաջի նորա գինի որպէս օրէն էր թագաւորացն, սթափեաց զնա և մխիթարեաց, և ուրախ առնէր զնա գուսանօք։ Եւ ի ժամ աղանդեր մատուցանելոյ՝ եդին առաջի նորա միրգ, խնձոր և վարունգ և ամիճ զի կերիցէ. և եդին դանակ նմա, որպէս զի հատցէ և կերիցէ զիարդ և կամեսցի։ Եւ Դրաստամատ մեծապէս ուրախ առնէր զնա, կայր յոտն և մխիթարէր զնա։ Իսկ յորժամ արբեցաւ և գինին եկն զակամբ նորա՝

արբեցաւ հպարտացաւ և ասէ. Վա՜յ ինձ Արշակայ, այսպէս և այս և յայսմ չափու, և այս անցք անցին ընդ իս։ Եւ զայս ասացեալ՝ զդանակն զոր ունէր ի ձեռինն, որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել՝ եհար ի սրտի իւրում, և մեռաւ անդէն ի նմին ժամուն մինչդեռ կայր ի բազմականին։ Իսկ յորժամ զայն ետես Դրաստամատն՝ յարձակեցաւ եհան ի նմանէ զնոյն դանակ և եհար յիւրում կշտին, և անդէն մեռաւ և նա ի նմին ժամուն» (Բուզ. Ե. Ե)։ Այս է ատասիկ «սրով» մեռանել, կամ «սաւուղաբար առնելն» Արշակայ։ Թէպէտ այլուր յիշուած է՝ հարկ կը համարինք հոս դնել միւսանգամ ի լուսաւորութիւն Բուզանդայ այս պատմութեան։ Քուշանք, Մազքութք, Հոնք՝ էին հիւսիսային Դուրանեան կամ Սկիւթացի ցեղեր, որոց կը թագաւորէին Պարսից Դարեհի վերջնոյ ցեղէն իշխանք, ազգակիցք Պարթևաց, նաև նախնի Հայոց, բայց կը կոչուէին Պահլաւ յանուն Բահլ (Բակտրա) քաղաքին, որ էր մայրաքաղաք նոցա, և իբր Պահլաւ՝ էին նաև ազգակիցք վերջին Արշակունի թագաւորաց Հայոց, Տրդատ-Արտաշիսէ (Արտաշէս Բ. ըստ Խորենացւոյն) հետէ։ Այս ցեղ կը թուի կոչուած Արշակունի, այսինքն արքունի, թագաւորական, վասն զի ժառանգական իրաւունք էր նոցա թագաւորութիւնն։ Այս Պահլաւ թագաւորութիւնն է որ կը կոչուի ըստ արդի գիտնոց Մար—Սկիւթական (Médoscythe), որոց և դահեկանք գտնուած են նման դահեկանաց Պարթևաց։ Սասանեանք երկար կռիւներ ունեցան այս Մար—Սկիւթացի տէրութեան կամ Քուշանաց հետ։ Կոստանդայ ժամանակ, երբ Հռոմայեցւոց և Սասանեանց մէջ գժտութիւն կար Միջագետաց և Հայոց համար՝ Շապուհ, ինչպէս տեսանք՝ ունէր պատերազմ այն ազգերուն հետ, և հաշտուելով ընդ նոսա՝ սկսաւ զիւր արշաւանն ի Միջագետս առ Կոստանդաւ և Յուլիանոսիւ։ Բուզանդ կ'ըսէ հոս, թէ Հայոց հետ պատերազմելէ դադրելէն ետքը առ Պապաւ՝ Շապուհ ունեցաւ դարձեալ պատերազմ Քուշանաց դէմ, և այս պատերազմին ժամանակ էր որ Դրաստամատ ներքինին գործեց այն արութիւններն, զորս կը յիշէ հոս Բուզանդ։

7. Շապհոյ պատերազմներէն ետքը Մուշեղի գործն եղաւ նուաճել այն սահմանագլուխ գաւառներն, որ առ Արշակաւ ապըստամբած էին և կամ զորս ուրիշ սահմանակից ազգեր հանած էին ի Հայոց։ Այս ապստամբ գաւառք, զորս մի ըստ միոջէ կը թուէ Բուզանդ՝ էին. *յարեւելից*՝ Ատրպատականի այն մասն որ կը վերաբերէր Հայոց. *ի հարաւոյ*՝ Նոշիրական (ասորական) աշխարհն, Կորդուաց նահանգը և Մարաց այն մասը որ կը վերաբերէր Հայոց. այն է կողմանք Հեր և Զարևանդ գաւառի. *ի հիւսիսոյ*՝ երկիրն

Արձախայ, Աղուան գաւառք յայսկոյս Կուր գետոյ, ինչպէս Ուտի, Շակաշէն, Գարդմանայ Ձոր, զորս գրաւած էին ազատ Աղուանք որ յայնկոյս Կուր գետոյ. *ի Հիւսիսոյ արևմըլից*՝ Կազբք, այսինքն Կազբից երկրին այն մասը որ կը կոչուէր Փայտակարան, պարսիկ բնակչօք. *յարևմտից Հիւսիսոյ*՝ բուն Վրաց ազգակից նահանգն Գուգարք. *յարևմտից Հարաւոյ եւ յարևմտից*՝ Աղձնիք, Ծոփք, Անգեղ տունն և Անձիտ.—«Ապա իբրև դադարեաց պատերազմն ի կողմանցն Պարսից և յապահովեցան իրք ճակատուն յայնմ կողմանէ՝ այնուհետև սկսանէր սպարապետն Հայոց Մուշեղ հարկանել զայնոսիկ որք ապստամբ եղեն ի թագաւորութենէն Արշակունեաց։ Նախ հարկանէր զտուն (կալուած) թագաւորին Հայոց որ յԱտրպատականին էր. նուաճէր և ի հարկի կացուցանէր և առնոյր բազում պանդանդս ի նոցանէ։ Հարկանէր Մուշեղ և զապստամբս Նոշիրական աշխարհին որ ապստամբեցին յարքայէն Հայոց. առնոյր պանդանդս, և զբնակիչս երկրին ի հարկի ծառայութեան կացուցանէր։ Հարկանէր և զԿորդուս, զԿորդիս և զՏմորիս ապստամբեալս յարքայէն Հայոց, դնէր հարկ և առնոյր պանդանդս։ Եւ զկողմանս Մարաց, քանզի և նոքա ապստամբեցին յարքայէն Հայոց՝ հարկանէր մեծապէս, գերէր զբազումս ի նոցանէ, մնացորդացն դնէր հարկս, և առնոյր պանդանդս։ Հարկանէր և զերկիրն Արձախայ մեծաւ պատերազմաւ, գերէր զբազումս ի նոցանէ, ի մնացորդացն առնոյր պանդանդս, և զմնացեալսն ի հարկի կացուցանէր։ Առնէր պատերազմ ընդ երկիրն Աղուանից, հարկանէր զնոսա ի հարուածս անհնարինս։ Եւ թափէր ի նոցանէ բազում գաւառս զորս հատեալ էր նոցա ի Հայոց, զՈւտի, զՇակաշէն և զՁորն Գարդմանայ, զԿողթ և այլ որ շուրջն էին զնովաւ գաւառք։ Եւ զԿուր գետ, որպէս և յառաջն լեալ էր՝ ընդ երկիրն Աղուանից և ընդ երկիրն իւրեանց սահման արարեալ կացուցանէին, և ի գլխաւորացն բազումս սպանանէին, և զմնացորդսն ի հարկի կացուցանէին, և պանդանդս ի նոցանէ առնուին։ Ապա խնդրէր զվրէժն մեծապէս սպարապետն Մուշեղ յերկրէն Պարսից ի Փայտակարան քաղաքէ, փոխանակ զի և նոքա նշկահեցին ստեցին արքային Հայոց։ Հասեալ զբազումս ի նոցանէ գլխով պատուհաս առնէր սպարապետն Մուշեղ, զմնացորդսն ի հարկի կացուցանէր, առնոյր պանդանդս ի նոցանէ, և անդ ոստիկանս վերակացուս թողոյր։ Ապա խաղայր ի վերայ Վրաց արքային, և նեղէր զնա մեծապէս. և հարկանէր զերկիրն... և զբդեաշխն Գուգարաց որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց և ապստամբեաց՝ կալեալ գլխատէր, և զազգն որձակոտոր առնէր, և զկանայսն և զդստերս ի գերութիւն վարէին։ Սոյն օրինակ և որ միանգամ ի

կողմանն յայնմիկ էին նախարարքն և ի թագաւորէն Հայոց եղեն ապստամբք՝ զամենեսեան գլխատէր, և թափէր զամենայն գաւառն, և առնոյր պանդանդս և զմնացեալսն ի հարկի կացուցանէր։ Եւ զհին սահմանսն որ յառաջուն էր լեալ ընդ երկիրն Հայոց և ընդ երկիրն Վրաց, որ է ինքն մեծ գետն Կուր, այնուհետև լինքն վարեալ՝ դառնայր անտի։ Դառնայր ապա զօրավարն Մուշեղ յերկիրն Աղձնեաց, և հարկանէր զերկիրն ի մեծ հարուածս, զի և նոքա ապստամբեալ էին յարքայէն Հայոց։ Զերբակալ արարեալ զբդեաշխն Աղձնեաց՝ զերկիրն ի հարկի կացուցանէր, և վերակացուս և ոստիկանս յերկրին Աղձնեաց թողուին։ Ապա անտի ի Ծոփս մեծ արշաւեցին, և նոքա էին ապստամբեալ։ Հարկանէր զերկիրն գաւառին Մուշեղ մեծի Ծոփաց, առնոյր պանդանդս, և զազգն ի հարկի կացուցանէր։ Հարկանէր և յԱնգեղ տանն զբազումս. բայց աշխարհն զի ոստան արքունի լեալ էր վաղ վաղ՝ բնակիչք գաւառին կային ի հարկի ծառայութեան։ Ապա ի գաւառն Անձտայ արշաւէր, և հարկանէր Մուշեղ զկողմանս գաւառացն այնոցիկ որ շուրջ էին զնովաւ, քանզի և նոքա ապստամբեցին ի թագաւորութենէն Արշակունեաց։ Հանէր ընդ սուր զտեարս գաւառին, առնոյր պանդանդս և նուաճէր, ի հարկի ծառայութեան թագաւորին Հայոց Պապայ զամենեսեան առհասարակ կացուցանէր» (Բուզ. Ե. Ը—ԺԹ.)։

Այս ապստամբ գաւառաց նուաճման համառօտ պատմութիւններն կը կնքէ Բուզանդ Մուշեղի հայրենասէր վաստակոց վրայ փառաւոր գովեստիւ. «Այլ քաջն զօրավարն սպարապետն Հայոց լի էր քինիւ մեծաւ և բազում նախանձու զամենայն աւուրս կենաց իւրոց, և միամտութեամբ և արդար վաստակով ջանայր հանապազ և վաստակէր ի վերայ թագաւորութեանն Հայոց աշխարհին։ Զտիւ և զգիշեր կայր յաշխատութեանն. ջանայր և ճգնէր կալ ի ճակատու պատերազմին, և ոչ թողոյր բնաւ ամենևին և ոչ քան զկորի մի գետին ի սահմանաց երկրին Հայոց ուրեք վտարել. ի վերայ աշխարհին կեալ, և մեռանել ի վերայ անուանն քաջութեան, ի վերայ բնակ տերանց, և ի վերայ բնակչաց աշխարհին, ի վերայ քրիստոնէութեանն հաւատոյ, ի վերայ հաւատացեալ, յԱստուած և ի Քրիստոս մկրտեալ ժողովրդոց, ի վերայ եկեղեցեաց և ի վերայ նուիրեալ սպասուց, ի վերայ վկայարանացն Քրիստոսի, ի վերայ ուխտի Աստուծոյ, ի վերայ քերց և եղբարց, ի վերայ մերձաւորաց տոհմին, ի վերայ բարեկաց բարեկիր բարեկամաց. հանապազ կայր զօրավարն Մուշեղ ի նահատակութեան պատերազմին, զանձն փոխանակ առնել աշխարհին, և յանձն իւր անխայէր ի մե-

*ռանել, զամենայն աւուրս կենաց իւրոց առաջի իւրոց բնակ տերանցն Արշակունեաց վաստակէր» (Բուզ. Ե. Ի.)։*

Ց. *Բուզանդայ ԻԱ—ԻԴ. գլուխներն կը բովանդակեն գովեստ և ամբաստանութիւն, յորս կան ոչ սակաւ անհաւատալի կէտեր՝ զորս որոշել ճշմարիտ պատմչի պարտքն է։ Գովեստք Բուզանդայ են զՆերսիսէ, իսկ ամբաստանութիւնքն զՊապայ։ Թէ Ներսէս էր բարեկարգիչ, «մխիթարէր, դարմանէր և տեսուչ լինէր աղքատաց, զօրկունս և զաղքատս հանգուցանէր, շինէր զեկեղեցիս ընդ ամենայն տեղիս, և զամենայն կործանեալս կանգնէր, և զամենայն կարգս տապալեալս ուղղէր և նորոգէր, շինէր և հաստատէր, խրատէր և յանդիմանէր», այլովքն հանդերձ՝—ճշմարիտ հայրապետի համար է արդարև հաւատալի, բայց ոչ նոյնպէս, թէ «առնէր բազում նշանս և զօրութիւնս մեծամեծս և բազում բժշկութիւնս ըքանչելեաց»։ Հաւատալի է նոյնպէս, թէ Ներսէս իբրև հայր կ'օրհնէր. անհաւատալի է սակայն, թէ զամենայն «զոր օրհնէր՝ օրհնէր», այսինքն՝ զով որ կ'օրհնէր՝ կ'օրհնուէր, և «զորս անիծանէր՝ անիծեալ լինէին». որպէս թէ կար ի վեր քան զընութիւն և անվրէպ զօրութիւն յօրհնութիւնսն և յանէծս Ներսիսի։ Նա բնաւ թէ Ներսէս կ'անիծէր զոք՝ չէ հաւատալի, եթէ պարտինք ընդունել թէ Ներսէս էր ճշմարիտ աշակերտ այն աստուածային Վարդապետին, որ կը պատուիրէ զանիծիչս անգամ օրհնել։ Յայտնի է, թէ Բուզանդ կը խօսի հոս ըստ միամիտ հաւատոց իւրոյ ժամանակին, և ոչ իբրև ճշմարիտ պատմիչ։ Գալով ամբաստանութեանցն զՊապայ—և այս է մանաւանդ քննութեան արժանի կէտ—սոցա մի մասն է յայտնապէս առասպել, զոր օրինակ թէ «մինչդեռ տղայ իկ էր Պապ՝ ձօնեաց զնա մայր նորա Փառանձեմ դիւաց», թէ «կախարդանօք երևէին ի նմա դևք յօձից կերպարանս», այնպէս որ «ամենայն մարդ աչօք բացօք տեսանէր զնոսա», բաց ի Ներսիսէ և ի Խադայ։ Գալով բնութեան դէմ մեղաց, զորս կը թողունք յիշել յանուանէ, չարատելու համար զգաստ ականջներ՝ Պապ եղած էր թերևս այնպիսի մոլութեանց գերի։ Այսպիսի օրինակներ չեն անլուր ի պատմութեան երևելի անձանց։ Կայսրներ, թագաւորներ, երևելի իշխաններ, պապեր անգամ, ոչ յոււիքն միայն, այլև ազնուագոյնք՝ կ'ամբաստանուին այս մոլութեամբ, յանուանէ՝ հինեբէն Տիտոս, և նորերէն Փրեդերիկոս մեծ։ Արժան է նկատել նաև երիտասարդ թագաւորին վրայ վատթար ազդեցութիւնը ոչ Պարսից միայն, այլև Յունաց, որոց բարոյականութիւնը կասկածելի է յայսմ մասին։ Բայց այս ամբաստանութիւն, եթէ ճշմարիտ ևս է՝ կը վերաբերի Պապայ առանձին և ոչ հրապարակական կենաց, զոր մա-*

նաւանդ կը նկատենք հոս. մենք կը խնդրենք թէ որպիսի ոք եղաւ Պապ, ոչ իբրև սոսկական, այլ իբրև թագաւոր։

Թ. Ըստ Բուզանդայ՝ որպէս թէ Պապ յանդիմանուելով ստէպ ի Ներսիսէ՝ կը թշնամանայ ընդ նմա և կամի սպանանել զնա, և կ'սպանանէ իսկ, և կ'եղծանէ, իբրև ի հեճուկս՝ ի նմանէ հաստատեալ ամէն կարգ, թոյլ տալով սոսկալի զեղծմանց բոլոր տէրութեան մէջ.—«Այլ թագաւորն Պապ յամենայն ժամ էր թշնամի մեծի քահանայապետին վասն յանդիմանութեան մեղաց իւրոց։ Իբրև ոչ զգաստանալ կամէր և ոչ համբերել նախատանացն՝ էարկ ի միտս իւր սպանանել զմեծ քահանայապետն Աստուծոյ զՆերսէս. և զի յայտնի ոչ մարթէր նմա առնել՝ կեղծաւորեալ կերպարանէր իբրև այն եթէ յուղղութիւն ինչ եկեալ է։ Եւ կոչեալ զնա յապարանս իւր ի Խախ աւանի յԵկեղեաց գաւառի՝ արար նմա ընթրիս։ Ինքնին թագաւորն յոտն կացեալ հոլանեալ, ի մէջ գետին անցեալ, անապակ մատուցանէր առնն Աստուծոյ յընթրիս անդ, դեղ մահու ընդ կոտինդն խառնեալ» (Բուզ. Ե. ԻԴ.)։ Կ'ընդունէինք թերևս այս պատմութիւնը, որ ինքնին չէ անհնարին և ոչ իսկ անհաւանական՝ եթէ օրինակ մահուն Ներսիսի կարծեցեալ դեղատուութենէն՝ չէր անտեղի և յայտնապէս սուտ։ Ըստ Բուզանդայ՝ որպէս թէ Ներսէս, երբ առաւ մահացու բաժակը՝ գիտաց թէ էր թոյն։ Իսկոյն գնաց իւր տունը բոլոր մեծամեծաց հետ որ էին ընդ նմա յընթրիսն, և վերցունելով պարեգօտը՝ ցուցուց սրտին վրայ կապուտակեալ իբրև գչափ նկանակի։ Թողունք, որ այս նշանն, զոր իբրև արդիւնք թունոյ մէջ կը բերէ Բուզանդ՝ չէ ամենևին նշան թունաւորելոյ. զարմանալին այն է, որ Ներսէս թունոյն ազդեցութիւնը կոտրելու համար մատուցուած դարմանները կը մերժէ, մարտիրոսութիւն համարելով մեռանել այնպէս. ուստի և իբր երկու ժամ՝ գունդ գունդ արիւն դուրս հասելով կը մեռնի.—«Յորժամ ըմպէր զբաժակն զայն՝ իմացեալ անդէն... յարուցեալ գնաց ի վանս իւր. և զհետ գնացին նորա ի տաճարէն արքունի ամենայն մեծամեծքն նախարարքն Հայոց, և Մուշեղ սպարապետն և Հայր մարդպետն։ Եւ իբրև եմուտ ի վանս իւր՝ վերացուցեալ զպարեգօտն իւր ցուցանէր ի վերայ սրտին կապուտակեալ քան զչափ նկանակի միոյ։ Իսկ մեծամեծքն նախարարացն մատուցանէին նմա թիւրակէս և անդեղեայս վասն ապրելոյ. իսկ նա ոչ կամեցեալ զայն ի բաց մերժէր, այլ ասէ. Մեծապէս եղև ինձ բարի, զի եհաս ինձ մեռանել վասն Քրիստոսի։... Յետ այսորիկ սկսաւ զարիւնն գունդ գունդ ի ներքուստ ընդ բերանն արտաքս հոսել իբրև զերկուս ժամս» (Բուզ. Ե. ԻԴ.)։ Այսպէս Բուզանդ կարծելով առնել

զՆերսէս մարտիրոս՝ առնէ զնա անձնասպան, տալով նմա մերժել դարմաններն, որով թերևս ազատէր զկեանսն՝ եթէ ճշմարիտ էր թունաւորութիւնն։ Թէպէտ ունինք պատճառ մերժելոյ, իբրև կեղծեալ, Ներսիսի մահուան պարագաներն, համարելով սակայն ճշմարիտ՝ չէ ամենևին արտաքոյ հաւանականութեան ասել, թէ սրտին վրայ կապուտակելն և արեան գունդագունդ հոսելն ընդ բերանն, եթէ ունին ինչ նշանակութիւն՝ այս է թէ արեան շրջանին կասելն եղաւ Ներսիսի մահը, ուստի և այն նշանք էին մանաւանդ կաթուածոյ քան թունաւորելոյ արդիւնք, զոր տգէտ և չարամիտ թշնամիք կարծեցին ի թունոյ, և զոճիրն ընծայեցին Պապայ իբրև թշնամւոյ Ներսիսի։

Ներսէս, որպէս վայել էր՝ թաղուեցաւ մեծ շքով ի Թիլ, իւր հարց գերեզմանատեղին։ Թող քաղաքական և զինուորական մեծամեծներն հանդերձ բազմութեամբ զօրաց՝ ինքն իսկ Պապ գնաց ի յուղարկաւորութիւն մեծ Հայրապետին, ըստ Բուզանդայ կեղծաւորութեամբ, ծածկելու համար զոճիրն.—«Եւ առեալ զմարմին սրբոյն Ներսէսի զաւնն Աստուծոյ պաշտօնեայք եկեղեցւոյն, և Փաւստոս եպիսկոպոս և պաշտօնէիցն գլխաւոր Տրդատ, և Մուշեղ սպարապետն և Հայր մարդպետ, և ամենայն ազատագունդ բանակն արքունի՝ բարձին յաւանէն ի Խախ գեղջէ ուր գործն կատարեցաւ, տարան ի Թիլն աւան յիւր գեւղն. հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղիւք վառելովք և մեծապաշտամամբք և բազում յիշատակօք զսուրբն յուղարկեցին։ Բայց մինչև էր ծածկեալ զմարմին սրբոյն՝ ինքն թագաւորն Պապ երթեալ պատեաց և թաղեաց ի մարտիրոսական բնակութիւնն. բայց թագաւորն Պապ ի չքմեղս լինելով՝ չլուելոյն առնէր, իբրև թէ իւր չիցէ գործեալ զայն» (Բուզ. Ե. ԻԴ.)։

Բուզանդ չթողուր Ներսիսի մահուան առանց հրաշից կատարուիլ, և այս առթիւ կը մուծանէ Եպիփան և Շաղիտա անուն երկու երևելի անապատաւորաց վարուց և գործոց պատմութիւնը չորս առանձին գլուխներով զորս մէջ բերած ենք այլուր. հոս պատմենք միայն տեսիլը, որ եղաւ սոցա ի մահուան Ներսիսի։ Սոքա ի տուընջեան մինչ կը նստէին իւրաքանչիւր իւր լեռը՝ կը տեսնեն զՆերսէս թռուցեալ ամպովք ի ձեռն հրեշտակաց։ Շաղիտա որ էր քաջ հոգետես՝ կը հասկնայ իսկոյն, թէ Ներսէս մեռած էր և թէ հոգի նորա էր որ կը վերանար յերկինս. իսկ Եպիփան համարեցաւ զնա յափշտակեալ մարմնով։ Երկոքին ևս ելլելով իրենց լեռներէն՝ կու գան յԵկեղեաց գաւառ և կ'իմանան, թէ մեռած էր սուրբն, և կը պատմեն իրենց տեսիլը ժողովրդեան.—«Արք երկու

կրօնաւորք անապատաւորք մինչդեռ նստէին ի լերինն, անուն միում Տաղխտա, և էր սա ազգաւ ասորի և նստէր յԱռեւծ լերինն, և միումն անուն Եպիփան, և էր սա ազգաւ յոյն և նստէր ի մեծի լերինն ի տեղի դիցն զոր կոչեն Աթոռ Անահտայ, և էին սոքա երկոքին լեալ աշակերտք սրբոյն Դանիելի մեծի. և մինչդեռ յիւրաքանչիւր լերին նստէին սոքա, ի ժամու յորում մեռաւ սուրբն Ներսէս՝ տեսանէին աչօք բացօք ի տուընջեան ժամու զայրն Աստուծոյ զՆերսէս իբրև յամպս յափշտակեալ, զի հրեշտակք տանէին զնա ի վեր, և գունդք գունդք գային նմա առաջի: Իբրև տեսին զայս տեսիլ անապատաւորքն՝ զարմացան ընդ գործն: Բայց Տաղխտայն որ էր յԱռեւծ լերինն, քանզի էր հմուտ այր՝ գիտաց եթէ հանգուցեալ է սուրբն Ներսէս, և այն՝ ոգիք նորա երևին նմա. բայց Եպիփան եդ ի մտի իւրում, թէ մարմնով իցէ յափշտակեալ: Ապա յարեան յիւրաքանչիւր լեռնէ, ընթացեալք փութով մինչև յԵկեղեաց գաւառ, եկին քննեցին տեսին, զի կատարեալ էր սուրբ հայրապետն Ներսէս. և եկին մինչև ի Թիլոյ գեւղն և տեսին զտեղին յորում եդեալ էր զնա, և դիպեալք միմեանց արքն հաւատարիմք՝ պատմէին միմեանց զոր ինչ տեսինն՝ առաջի ժողովրդոցն» (Բուզ. Ե. ԻԵ.):

**10.** Տեսցուք այժմ, թէ ինչ էին գործք Պապայ, որոց վասն կը բամբասէ զնա Բուզանդ, իբրև խանգարիչ կարգաց և ուղղութեանց Ներսիսի: Ըստ Բուզանդայ՝ Ներսէս շինած էր այրեաց, որբոց, կուսանաց համար յատուկ տեղեր ամէն գաւառի մէջ, և առատ ռոճիկ կարգած էր այնպիսեաց համար իւրաքանչիւր գաւառի ժողովուրդէն: Պապ հրաման կու տայ աւերել այս հաստատութիւններն, և որ մեծի անզգամութեան էր, բայց է անհնարին զրպարտութիւն՝ կու տայ պղծել զկուսանսն: Ի կենդանութեան Ներսիսի մուրացիկ ամենևին չէր տեսնուէր Հայոց բոլոր սահմաններուն մէջ, այլ ժողովուրդը կը տանէր զպիտոյս նոցա յոտս նոցա, և աղքատք լցեալ էին ամէն բարեօք: Պապ պատժով արգելեց տալ տուրս աղքատաց: Յաւուրս Ներսիսի ոչ ոք կ'իշխէր թողուլ զիւր պսակեալ ամուսին և առնուլ ուրիշ կին. յետ մահուն Ներսիսի Պապ հրաման կու տայ թողուլ զկանայս, այնպէս որ կըրնար մարդ տասը կին փոխել: Նոյնպէս յետ մահուն Ներսիսի շատ գաւառներ և շատ մարդիկ համարձակութիւն առին թագաւորէն դառնալ ի կռապաշտութիւն, և կանգնեցան պատկերք կռոց շատ տեղեր: Տրդատայ և Լուսաւորչին ժամանակէն եկեղեցիք ունէին եօթն եօթն հող կամ կալուած գետնոյ, յորոց կը կերակրէին ոչ միայն կղերն, այլ և որդիք և մերձաւորք նոցա: Պապ յետ մա-

հուն Ներսիսի այն հողերուն հինգն առաւ յարքունիս, թողլով իւրաքանչիւր եկեղեցւոյ երկու հող միայն և մէն մի երէց և սարկաւագ, մնացեալներն առաւ ի ծառայութիւն տէրութեան։ Դարձեալ՝ ի Նախնեաց անտի սահմանուած էր երկրին պտուղներէն տալ տասանորդ եկեղեցեաց․ Պապ կ՚արգելու նաև զայս սովորութիւն։ Ներսէս արգելած էր խստիւ՝ հեթանոսական օրինօք կոծ դնել ի վերայ մեռելոց․ յետ մահուան նորա առ Պապաւ նորոգուեցաւ արարողութիւնն այն հին։ Ահա բանք Բուզանդայ․ «Թագաւորն Հայոց Պապ թէպէտ և սպան զհայրապետն աշխարհին Հայոց զՆերսէս՝ սակայն ոչ յագեցաւ մահուամբ նորա, այլ ջանայր թէ զինչ միանգամ կարգք էցեն ուղղութեան ի Ներսիսէ եդեալ՝ եղծեսցէ և խանգարեսցէ։ Եւ սկսաւ հրաման տալ յայտնապէս յաշխարհին՝ աւերել զայրենոցսն և զորբանոցսն և զկուսաստանս, զորս Ներսիսի էր շինեալ յամենայն գաւառս, զի որ միանգամ կուսանք և հաւատաւորք էցեն՝ անդր ժողովեսցին ի պահս և յաղօթս, և կերակրել յաշխարհէ և յիւրաքանչիւր բնտանեաց, յամենայն կողմանց ռոճիկս և դարմանս կարգեալ․ և զկուսանսն հաւատաւորս տայր թագաւորն Պապ ի խառնակութիւն պղծութեան։ Ցամսն Ներսիսի զաղքատս բնաւ ամենևին ի մոյր ոչ տեսանէր ոք ընդ ամենայն սահմանս Հայոց, այլ անդէն ի հանգստեան նոցին, այսինքն յօրկանոցսն ամենայն մարդիկ տանէին զամենայն պիտոյս նոցա․ անդէն իսկ անկարօտ յամենայն ումեքէ լցեալ էին։ Իսկ յետ մահուն քահանայապետին թէ առնէր ոք հանգիստ աղքատաց՝ մեծ պատիժս կրէր ի թագաւորէն։ Ցաւուրսն Ներսիսի ոչ ոք իշխէր հանել կամ թողուլ զկին իւր ամուսին, զոր միանգամ քօղով կամ պսակաւ հարսանեացն օրհնութեամբ առեալ էր, և ոչ այլ առնել միւս անգամ համարձակէր․ իսկ յետ մահուան նորա ամենայն մարդիկ առին հրաման ի թագաւորէն թողուլ զկանայս ամուսինս իւրեանց․ էր զի մի այր տասն կին փոխէր։ Ցետ նորա ելին յաշխարհէս բազում գաւառք Հայոց և բազում մարդիկ ի հնութիւն դիւապաշտութեան դարձան, և ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին ի համարձակութենէ թագաւորին Պապայ․ զի ոչ գոյր յանդիմանիչ և ոչ ոք էր այն յորմէ խիթային․ զինչ և կամէին գործել՝ համարձակութեամբ գործէին․ բազումք պատկերս կանգնեալ երկիր պագանէին։ Եւ հատ ևս յարքունիս Պապ զհող եկեղեցւոյն զոր տուեալ էր թագաւորին Տրդատայ առ մեծաւն Գրիգորիւ քահանայապետիւ ի սպաս պաշտաման եկեղեցւոյ ընդ ամենայն երկիրն Հայոց։ Ցեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս և միայն թողոյր երկուս հողս, և երկուս առ գեւղ մի, երէց և սարկաւագ, և

գալըն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան — զեղբարս և զորդիս երիցանցն և սարկաւագաց։ Եւ զկարգս պտղոյն և տասանորդացն որ ի նախնեացն կարգեալ սովորութիւն էր տալ յեկեղեցիս՝ հանէր Պապ հրամանս ընդ աշխարհ, զի մի ոք տացէ։ Եթէ յանկարծ մեռանէր ոք՝ ոչ ոք իշխէր անյուսութեամբ լալ զմեռեալըն և ոչ կոծ ոք դնէր կամ աշխարանս, և ոչ ձայնս ոք արկանէր ի վերայ մեռելոյն յաւուրսն Ներսիսի, այլ լոկ արտասուօք և ըստ արժանի սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղօք և մոմեղինօք լուցելովք զմեռեալսն յուղարկէին։ Ապա յետ մահուանն Ներսիսի զմեռեալսն լային փողովք և փանդռօք և վնօք զկոծսն պարուցն կաքաւելով, զտիգսն հատեալս, զերեսս պատառեալս, արք և կանայք ճիւաղութեամբ պարուք դէմ ընդ դէմ հարկանելով զմեռեալսն յուղարկէին» (Բուզ. Ե. ԼԱ.)։ Թո՛ղ չափազանցութիւնը որ կայ այս նկարագրին մէջ՝ յայտնի կը տեսնուի, թէ Բուզանդ կը ջանայ փոխել կամ ծեքել Պապայ կարգադրութեանց ոգին, բարեկարգիչ թագաւորին ուղղութիւններն տալով Ներսիսի դէմ անձնական ատելութեան։ Արդարև հասարակաց օգտին ծառայող բարեսիրական և վանական հաստատութիւնք համաձայն են քրիստոնէական ոգւոյն, և բարւոք տէրութիւն մը պարտի նպաստել մանաւանդ այս ոգւոյն քան արգելուլ զայն։ Դարերու փորձը ցուցած է սակայն, թէ այսպիսի հաստատութիւնք, եթէ քան զչափն բազմանան՝ քաջալերելով ծուլութիւնը՝ կը յաւելուն քան կը կարճեն հասարակաց թշուառութիւնը։ Ուստի եթէ այնպիսի հաստատութիւնք բազմացած էին յանչափս առ Պապաւ, բարեսիրութեան կոյր եռանդով, ինչպէս կ՚երևի Բուզանդայ նկարագրէն՝ Պապայ կարճելն այն հաստատութիւններն, թերևս սակաւ ինչ չափազանց նախանձու՝ չէր հակառակ բարեկարգիչ թագաւորի պարտուց և ոչ անհամաձայն արդի լուսաւորեալ սկզբանց։ Եւրոպական ազգաց մէջ բարեսիրական և վանական պէսպէս և անթիւ հաստատութիւններ սկսան և յառաջ տարուեցան մեծ ազատութեամբ եկեղեցւոյ կողմանէ։ Զարմանք չէ որ Հայոց մէջ ևս եկեղեցւոյ կողմանէ սկսէին և տարուէին յառաջ նոցին նման հաստատութիւնք։ Բայց ինչպէս յԵւրոպա անչափ ազատութիւնն յայսմ բերաւ զեղծումն՝ նոյն ազատութիւն կրնար բերել միևնոյն զեղծումն նաև ի Հայս, և ընրաւ իսկ։ Ի սկզբանէ անտի դարձին Հայոց ի քրիստոնէութիւն առ Տրդատաւ՝ եկեղեցին սկսաւ վայելել մեծ ազատութիւն։ Նորընծայ թագաւորին եռանդը մեծացուց կղերը և՛ պատուով և՛ հարստութեամբ։ Կաթողիկոսութիւնն որ ի սկզբան ժառանգական էր ի տան Լուսաւորչին՝ ունէր ազդեցութիւն մեծ, գրեթէ հաւասար թագա-

ւորին։ Առ Խոսրովաւ յաջորդաւ Տրդատայ այնչափ էր այս ազդեցութիւն. որ արքունի հրամանք հաւասար կ'երթային յանուն կաթողիկոսին և թագաւորին (Բուզ. Գ. Դ.)։ Վրթանէս գահակից էր մանաւանդ թագաւորին քան խորհրդակից և խրատտու։ Գալով եկեղեցական ընչից՝ կալուածք եկեղեցւոյ էին այնչափ, որ թող եկեղեցւոյ նուիրուած գեղեր և ագարակներ որ անթիւ էին՝ Լուսաւորչին տունը միայն, իբրև ժառանգական քահանայապետութիւն՝ ունէր հնգետասան գաւառ իբրև առանձին ստացուած, «ձեռական իշխանութիւն» (Բուզ. Դ. ԺԴ.)։ Առ Ներսիսիւ, առ որով եկեղեցական ճոխութիւնն հասած էր յիւր վերջին ծագ՝ երկրին ազնուագոյն մասն էր եկեղեցւոյ, մինչև Արշակայ մարդպետին սպառնալ՝ տալ գրաւել յարքունիս Աշտիշատայ գեղեցիկ տեղերն իբրև արդարև թագաւորավայել (Բուզ. Անդ)։ Բնական էր որ եկեղեցւոյ այս դիրքըն ձգէր տէրութեան ուշադրութիւնը։ Արդէն առ Տիրանաւ կը տեսնենք կաթողիկոսին և թագաւորին մէջ անհամաձայնութիւն, որ տակաւ կը սաստկանայ առ Արշակաւ, մինչև խզել բարեկամութեան վերջին թելն ի մէջ Ներսիսի և թագաւորին։ Ներսէս կը հեռանայ բանակէն մինչև ի մահն Արշակայ։ Զարմանք չէ որ առ Պապաւ պահանջմունք Ներսիսի բերին նոյն հակառակութիւնը։ Պապ թշնամի է Ներսիսի, Ներսէս տժգոհ ի Պապայ։ Այս վիճակն էր արդեօք արդիւնք անձնական հակառակութեան, ինչպէս կուտայ կարծել Բուզանդ, թէ ջանից թագաւորին՝ սեղմելու եկեղեցւոյն անչափ ազատութիւնը։ Ինչպէս ամէն հաստատութեան՝ նոյնպէս եկեղեցականին անչափ ազատութիւնը տարած է միշտ զեղծման։ Ուստի կղերական ազատութեան սեղմումն աշխարհական իշխանութեան կողմանէ շատ անգամ չէ անիրաւ՝ ինչպէս կը բամբասուի։ Անցեալ դարուն վերջին կիսէն հետէ քաղաքակիրթ տէրութեանց մէջ տեսնուած սեղմումներու գիտենք թէ սոյնօրինակ զեղծմունք եղան պատճառ։ ԶԱւստրիա միայն, որ քան զայլ տէրութիւնս Եւրոպայ պահպանողական է՝ յիշել միայն բաւական է։ Յովսէփ Բ. կայսեր (1765—1790) անուանեալ նորաձևութիւնք որ այնչափ կարևոր էին՝ եղան ոչ սակաւ գժտութեան առիթ Հռոմայ հետ, մինչև Պիոսի Զ-ի երթալ անձամբ առ կայսր։ Հաւանական է թէ Նորաձևութիւնն առնուլ յեղափոխութեան ձև՝ եթէ պարագայք ժամանակին չտային իմաստուն պապին՝ փոխել սպառնացող կերպարանքըն ի կերպարանս աղաչաւորի։ Յովսէփ անթիւ վանական հաստատութիւններէն սոսկ տեսականները ջնջեց, գործնականներն տասանորդեց, քաղաքաց եկեղեցիներուն հարիւրաւորն իջաւ տասնաւորի. ընդհակառակն ամէն գիւղ կամ շէն ունեցաւ եկեղեցի ժողովրդա-

*պետով մը զօրս առաջ չունէր. դատարկապորտներու յոյսը վերցաւ բարեմիտ ժողովրդեան բարեսիրութեանը, կեղծաւորներու մուտը փակուեցաւ ի վանորայս, եկեղեցւոյ պաշտօնէից թիւը նուազեցաւ՝ առանց պակասելու։ Ի՞նչ տարբերութիւն ունի Յովսէփայ Բ-ի ուղղութիւններէն Պապայ հատանելն եկեղեցւոյ հողերուն հինգ եօթներորդը, բառնալն ի սպառ կամ ըստ մասին աղքատանոցներ, հիւանդանոցներ, այրենոցներ, կուսանոցներ, որ եղած էին ծոյլերու և տէրութեան ծառայութենէ փախչողներու ապաստանարան։ Այլ թէ Պապ ի հեճուկս Ներսիսի «սկսաւ հրաման տալ» ոչ միայն «աւերել զայրենոցս և զօրբանոցս և զկուսաստանս», այլ և «զկուսանսն տալ ի խառնակութիւն», թէ «հրաման տայր ամենայն աշխարհի իշխանութեան իւրոյ», զի «աղքատքն ի մոյր ելցեն», և «ոք ինչ մի իշխեսցէ տանել նոցա», և թէ «եթէ առնէր ոք հանգիստ աղքատաց՝ մեծ պատիժս կրէր ի թագաւորէն», թէ «ամենայն մարդաւին հրաման ի թագաւորէն թողուլ զկանայս ամուսինս իւրեանց», թէ «բազում գաւառք և բազում մարդիկ ի հնութիւն կռապաշտութեան դարձան, և ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին», և զօրս սոցին նման են՝ կը մերժենք իբրև լոկ զրպարտութիւն, չարախօսութենէ ստեղծուած։ Չայս պիտի չհամարձակէինք թերևս ասել՝ եթէ չունենայինք զանաչառն Ամմիանոս ժամանակակից, որ այնպէս մանր և ճշդիւ կու տայ մեզ Պապայ դէմ եղած զրպարտութեանց բուն պատճառն, ինչպէս նաև զօրինակ եղերելի մահուան նորա։*

*Պապայ, իբրև բարեկարգչի, միւս ևս մեծ գործն այն է, որ կաթողիկոսաց ի Կեսարիոյ ձեռնադրութիւն առնլոյ հին պայմանը վերցուց, զՅուսիկ ումն եպիսկոպոս ի զաւակէն Աղբիանոսի դնելով կաթողիկոս զկնի Ներսիսի «առանց հրամանի» եպիսկոպոսապետին Կեսարու. այսպէս հիմն դրաւ Հայաստանեայց եկեղեցւոյ անկախութեան, որ այնչափ գժտութեան առիթ եղաւ երկու մեծ վիճակաց մէջ, ինչպէս պատմուած է այլուր (Բուզ. Ե. ԻԹ.)։*

*Ըստ Բուզանդայ՝ թագաւորն Պապ յանկարծ, որպէս թէ յայլոց խելս լեալ՝ խռովեցաւ Յունաց թագաւորէն և յարեցաւ ի Պարսիկս, պատգամաւորներ արձակելով լի թշնամանօք առ կայսր, և պահանջելով իբրև ի հնուց Հայոց վերաբերեալ՝ տասն քաղաք Կապադովկիոյ կողմը հանդերձ Կեսարեաւ և Ուռհայիւ, առանց անսալոյ Մուշեղի և այլոց նախարարաց, որ կը խրատէին զնա չբաժանուիլ ի Յունաց։ Ըստ Բուզանդայ՝ Պապայ այս անմիտ յանդգնութիւնն եղաւ պատճառ կորստեան նորա. քանզի կայսրը հրաման ղրկեց իւր զօրավարներուն, որ դաւով հրաւիրելով զՊապ*

ի խնջոյս՝ սպանին։ Այս խժական գործը կը նկարագրէ Բուզանդ մանր համաձայն Ամմիանու. —«Եւ շրջեաց զմիտս իւր թագաւորն Պապ և խոտորեաց զսիրտ իւր ի թագաւորէն Յունաց, և կամեցաւ խառնել զսէր իւր և առնել միաբանութիւն ընդ թագաւորին Պարսից, և սկսաւ թիկունս իւր առնել զարքայն Պարսից, և արձակել անդրէն հրեշտակս յաղագս միաբանութեան։ Եւ առաքէր հրեշտակս առ թագաւորն Յունաց, եթէ Կեսարեա հեռ և տասն քաղաք մեր լեալ է, արդ ի բաց տուր. և զՈւռհա քաղաք շինեալ է նախնեացն մերոց. արդ եթէ ոչ կամիս խանգար ինչ առնել՝ տուր ի բաց, ապա թէ ոչ կռուիմք մեծաւ պատերազմաւ։ Այլ Մուշեղ և ամենայն իշխանքն Հայոց շատ եդին ի մտի արքային, զի մի քակեսցէ զուխտ յերկրէն թագաւորութենէն Յունաց, և ոչ անսաց նոցա, և յայտնեաց զթշնամութիւն իւր զոր ունէր ընդ թագաւորին Յունաց։ Այլ իշխանքն Յունաց և զօրքն նոցին տակաւին էին յերկրին Հայոց և անուն իշխանացն՝ միումն Տերենտ էր, միւսումն Ադէ։ Եւ յղեաց դեսպան մի գաղտուկ թագաւորն Յունաց առ իշխանսն զօրացն իւրոց որ էին յերկրին Հայոց, և հրաման տայր սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղև իբրև ընկալան զայս հրաման ի թագաւորէն Յունաց իշխանքն իւր՝ սպասէին պահու ի դէպ սպանանել զթագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղև ի դիպան ժամանակի իբրև գիտացին Տերենտն և Ադէն զօրավարքն զօրացն Յունաց, թէ միայն է թագաւորն Հայոց Պապ, և ամենայն մեծամեծքն և զօրքն Հայոց չէին անդ, և էր թագաւորն Հայոց Պապ բանակեալ ի դաշտին ի Բագրաւանդ գաւառի ի Խու անուն տեղւոջ, և բանակ զօրացն Յունաց բանակեալ էին մօտ առ բանակին Հայոց արքային։ Ապա զօրավարքն Յունաց հաց մեծապէս գործեալ՝ յընթրիս հրաւիրեալ կոչեցին զմեծ թագաւորն Հայոց զՊապ մեծապէս ըստ արժանաւորութեան նորա, որպէս օրէն էր զայր թագաւոր ի հաց մեծ կոչել, և առնէին կազմութիւն պատրաստութեան։ Եւ եկեալ թագաւորն Պապ յընթրիս՝ մտեալ բազմեցաւ յուտել և յըմպել։ Եւ իբրև մտանէր արքայն ի խորանն Տերենտի զօրավարին Յունաց՝ լեգէոն սպարակիր հետևակն, վահան ի ձեռն, սակուր զգօտւոյ, շուրջ ի ներքոյ զորմովք խորանին պատեալ պսակէին. սոյնպէս և արտաքոյ կազմէին ի ներքոյ կուռ. վառեալք, և ի վերոյ հանդերձք զգեցեալք պատրաստէին։ Իսկ թագաւորն Պապ համարէր ի միտս իւր, թէ ի պատիւ ինչ նորա զայս առնիցեն։ Եւ մինչդեռ յընթրիսն ուտէր՝ սակրաւոր զօրքն ի թիկանց կուսէ նորա կարգեալք պսակեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրև ընդ գինիս մտին, որպէս

զառաջին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ, և առհասարակ թմբկահարք և սրնգահարք, քնարահարք և փողհարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան։ Եւ վահանաւոր լեգէոնին հրաման ետուն, և մինչդեռ թագաւորն Պապ զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր, և նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր տաշտ ոսկի ի մատունս իւր, իսկ աջ ձեռնն եդեալ էր ի դաստապան նրանին զոր կապեալն էր յաջու ազդերն իւրում, և մինչդեռ բերանն ի բաժակին էր յըմպելն, և աչօքն յառաջ կոյս պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխս գուսանացն՝ հրաման լինէր ակնարկելով զօրացն Յունաց։ Եւ լեգէոն սակրաւորքըն երկու ի թիկանց կուռէ կային ի սպասու ոսկիկմբէ վահանօքն. յանկարծօրէն կից ի վեր առեալ զսակուրսն՝ զարկանէին թագաւորին Պապայ. մին կշիռ զուլն հարկանէր սակրաւն, և միւսն ևս սակրաւորն զաջ թաթ ձեռինն որ կայր ի վերայ դաստապանի նրանին՝ հարկանէր կտրէր և ի բաց ընդենոյր։ Անդէն ի բերանս տապալէր թագաւորն Պապ, և գինին տաշտիւն և արիւնն պարանոցին նովաւ հանդերձ ի վերայ բաժակակալ ոկտեղն անկանէր առ հասարակ, և անդէն սատակէր թագաւորն Պապ։ Ընդ չփոթելոյ տաճարին խռովութեան Գնէլ տէր գաւառին Անձևացեաց յոտն կացեալ յիւրմէ բազմականէն՝ հանեալ զիւր սուսերն հարկանէր զմի ի լեգէոնաց. անտի սպանանէր, յայնցանէ որ հարին զթագաւորն։ Ապա Տերենտ զօրավարն Յունաց զիւր սուսերն հանեալ ածէր, տարակաց ի գըլխոյն Գնելոյ զսկաւառակն գլխոյն ի վերայ աչացն ի բաց ընդենոյր։ Եւ այլ ինչ ոք ոչ կարաց յանդգնել ասել ինչ ընդ նոսա և ոչինչ» (Բուզ. Ե. ԼԲ.)։

**11.** Դիտմամբ թէ առանց դիտման՝ չենք գիտեր, Բուզանդ, որ այսպէս մանր կը պատմէ այս սոսկալի դաւաճանութիւնը՝ չըտար ամենևին Պապայ ոչ խոտորելուն ի Յունաց և ոչ սպանուելուն բուն պատճառը։ Հոս հարկ է դիմել առ Ամմիանոս, որ Պապայ պատմութեան այս մասէն կը բանայ վարագոյրը, համակ ջատագով կենալով մանուկ թագաւորին։ Չէ մարթ ասել ստուգիւ, թէ Պապ արդարև ունեցաւ այն ամբարտաւան խորհուրդը – պահանջել ի կայսրէն քաղաքներ որ Հայոց կը վերաբերէին ի հնումն, և միտեցաւ ի Շապուհ. սաչափ միայն գիտեմք, թէ Ամմիանոս զՊապ գիտէ հաւատարիմ առ Հռոմայեցիս մինչև ի մահ իւր, և արդէն մահուան պարագան զոր կ'ընդունի և Բուզանդ՝ կըցուցնէ թէ Պապ էր Հռոմայեցւոց հետ և վստահ ի նոսա։ Շատ հաւանական է թէ Բուզանդայ այս պատմութիւնն ևս, այն է թողուլն Պապայ

զՅոյնս և յարել ի Շապուհ՝ է այն զրպարտութիւններէն մին, զորս Բուզանդ, կոյր ջատագով բարեկարգութեանց Ներսէսի՝ կը դի-զէ ի գլուխ դժբախտ թագաւորին։

**12.** Եթէ ունեցաւ ևս Պապ այսպիսի ինչ խորհուրդ՝ անտարակոյս պատճառն էր դաւաճանութիւնն նիւթեալ նմա ի Վաղեսէ. բայց զայս ևս չընդունիր Ամմիանոս, ինչպէս պիտի տեսնենք։ Լսենք ուրեմն Ամմիանու։ Պապայ պատմութեան այս մասն զոր կու տայ մեզ Ամմիանոս՝ չիք առ Բուզանդայ. յայտնի է սակայն, թէ պատմութիւն հռոմայեցի վիպագրին չէ և չկարէ լինել գիւտ։ Մինչ Պապ պարապ տունլով պատերազմներէն կը կռուէր իւր երկրին զեղծմանց դէմ՝ ըստ Ամմիանու հակառակորդք նորա, յորոց մի էր Տերենտ չարամիտ չարախորհուրդ՝ կը գրգռէին զՎաղէս կասկածոտ, անգութ և դիւրահաւան ընդդէմ թագաւորին, մինչև կոչել զնա կայսեր, զայլ ոք փոխանակ նորա դրկելու մտօք, ըստ խորհրդոյ Տերենտի։ Պապ որ միամտութեամբ կ'երթայ առ կայսր՝ տեսնելով զանձն խաբուած՝ երեքհարիւր ձիաւորօք խոյս կու տայ ի Տարսոնէ ուր էր արգելուած, և մեծ վտանգաւ և դժուարութեամբ կը հասնի ի Հայս ի մեծ ուրախութիւն իւր հպատակաց, ի դերև հանելով իւր հետամուտներուն յոյսը։ Պապայ խուսափելըն այսպէս իւր հետամուտներէն, որ կանխելով բռնած էին ամէն անցք՝ ընծայուեցաւ կախարդութեան, որպէս թէ Պապ անհնարին հմուտ կիրկէական դիւթութեան՝ եղած էր չիք յաչաց հալածողաց և թէ նա այս դիւական արուեստիւ կարող էր վնասել նմին իսկ կայսեր։ Չէր ամենևին դժուարին հաւատարմացունել զայս կայսեր, որ ըստ վկայութեան Ամմիանու ոչ հաւատացող միայն, այլ և հալածիչ էր կախարդութեան։ Կախարդութեան անմիտ կասկածը միայն բաւական էր մատնել ի տանջանս և ի մահ արանց և կանանց բազմութիւն հրամանաւ անապաշտ կայսեր (Ամմ. ԻԸ. 1, ԻԹ. 2)։

**13.** Մարկեղիանոս ոմն յարևմուտս դաւով սպանած էր նոյն տարին (374) ի խնջոյս Կուադ կոչուած գերմանական ցեղին թագաւորը Գաբինիոս։ Այս նենգաւոր գործը պատճառ եղած էր մեծ յուզմանց յարևմուտս։ Զայս կ'ակնարկէ Ամմիանոս յաջորդ հատուածին մէջ, որ է մին ի փառաւոր յիշատակութեանց հռոմէական պատմութեան զՀայոց. «Մինչ այս խռովութիւնք յուզէին յԻւրոպա ի նենգութենէն Մարկեղինեայ և վասն սպանման թագաւորին Կուադաց՝ յարևելս յանձին Պապայ արքային Հայոց գործէր միւս ևս նմին նման դաւ։ Աւասիկ պատճառ ամբարշտութեան խորհրդոյն որում եղաք հասու։ Ստէպ, և բազում անգամ յանիրաւի, լինէին ամբաստան զմանուկ թագաւորէն առ Վաղէս արք որ ի հասարա-

կաց վնասուց խնդրեն իւրեանց շահ։ Ի սոցա համարի էր Տերենտիոս դուքս, որ թէպէտ և շրջէր միշտ զաչս ի խոնարհ և երկիւղած՝ ոչ դադարէր ցորչափ կենդանի էր, գրգռել խռովութիւնս և հերձուածս։ Գաղտ ի բանի լեալ սորա ընդ ոմանս ի Հայոց որ վասըն գործոց իւրեանց չարաց յիրաւի ունէին պատճառս երկնչելոյ ի թագաւորէն՝ տայր նոցա ստէպ առնել նամականի առ կայսր։ Յաճախ յուշ առնէին կայսեր զսպանումն Կիւղակայ և Արտաւանայ և աղարտէին զմանուկ թագաւորն իբրև յամբարտաւանութիւն հատեալ և մէտ ի հարստահարել, մինչև ետուն յղել պատուէր հրամանի առ Պապ՝ երթալ ի Տարսոն Կիլիկեցւոց, իբր այն թէ ունիցի կայսր խօսել ընդ նմա գիրաց կարևորաց։ Անդ կայր Պապ թագաւորաբար, այլ իբրև ի դիպահոջ. ոչ եգիտ մուտ առ կայսր, և ոչ հանէր ոք նմա ի վեր զպատճառն վասն որոյ կոչեցաւն։ Ապա ազդ լինէր նմա, եթէ Տերենտոն ասէր ի թուղթսն առ կայսըր, եթէ աղերս Հռոմայեցւոցն ընդ Հայոց պահանջէր իմն փութալ ձգել ի Հայս այլ թագաւոր, գուցէ, ասէր, առ ատելութեանն ընդ Պապ և յերկիւղէն թէ դառնայցէ նա յետս՝ ազգն այն բարեկամ Հռոմոց տացէ ձեռս յարքայն Պարսից, որ այրէր խանձէր յինքն կորզել զերկիրն բռնութեամբ կամ սպառնալեօք և կամ ողոքով։ Զայս լուեալ Պապայ՝ ի միտ առնոյր, եթէ դաւ էր նմա, և թէ ոչ այլով իւիք գոյր նմա հնար գտանել փըրկութեան աղագս՝ եթէ ոչ փութանակի փախստեամբ։ Ապա խորհրդով բարեկամաց ընտրեալ յիւրոց անտի երեքհարիւր հեծեալ սպառազէն, որպէս սովոր էր ի մեծամեծ վտանգս, զոգի ի բռին կալեալ լինէր ձեռներէց՝ ի տարաժամել աւուրն աճապարել անկանել ի ճանապարհ։ Այսմ իրազեկ լեալ շահապ քաղաքին ի ձեռըն ոստիկանի պահապանացն՝ պնդէր զկնի, և հասեալ առ նա ի միում յարուարձանացն՝ աղաչէր դառնալ յետս, այլ ոչինչ վճարեալ, նա մանաւանդ զահի ի սպառնալեաց թագաւորին՝ լաւ համարէր խոյս տալ։ Հարկ լինէր այնուհետև արձակել լեգէոն մի զկնի փախստէիցն, որոց տեսեալ զգունդն եկեալ հասեալ՝ լինէին դիմակալ, իբրև զկայծակունս տեղացեալ զնետս յօդս կամաւ, որպէս թէ վրիպելով իմն, և այնպէս շտապ տագնապի ի վերայ գնդին հասուցանէին, մինչև զահի հարեալ և՛ զօրավարին և զօրուն՝ ի քաղաք անդր անկանէին, ճեպելով առաւել ի փախստեանն քան ի գալստեան։ Ապա զերծեալք յահէ անտի հալածելոյ՝ թագաւորն և որ ընդ նմայն էին երկուս տիւս և երկուս գիշերս խաղացեալ մեծաւ տագնապաւ հասանէին յափունս անդր Եփրատայ, և զի չէին ատակ ի լիւղ անցանել ընդ յորձանսն, և ոչ նաւք գոյին՝ թագաւորն և բռ-

վանդակ գունդն ահիւ պաշարեալ առ վտանգին մտանէին ի հնար հայթայթանաց։ Առեալ ըստ բաւականին գահաւորակս զորս գտին ի շէնսն՝ կապեցին մէն մի ընդ երկուս տիկս զոր դիւրին էր գըտանել բազմութեամբ ի գինաւէտ երկրին։ Արք աւագք ի զօրուէն և Թագաւորն գլխովին նստեալ ի գահաւորակսն, ձգելով զերիվարսն զկնի իւրեանց և հատեալ զյորձանսն՝ խոտորնակի գային հասանէին յայնկոյս գետոյն մեծաւ դժուարութեամբ։ Իսկ մնացեալ զօրն, հեծեալ իւրաքանչիւր յերիվար իւր, ի լուղ անցանէին։ Մարտ եդեալ ընդ ալիս, և բազում անգամ մերձ լեալ յընկղմել, յետոյ ուրեմն Թացեալք և ոգեսպառ՝ ունէին զցամաքն, ուր յետ ոգի առնլոյ սակաւիկ մի՝ պնդագոյնս քան զառաջինն յառաջ մատուցանէին զճանապարհն։ Խռովեցաւ կայսրն ընդ լուր փախըստեանն Պապա, քանզի համարէր եթէ ստուգիւ յետս կացցէ այրն. իսկ և իսկ տուեալ աղեղնաւորս հազար Թեթևս Դանիելի կոմսի և Բարզիմերայ վերակացուի սպարակրաց՝ արձակէր զնոսա ստիպաւ ածել զՊապ ձերբակալ առ ինքն։ Քաջ տեղեակ էին արքն երկրին, և մինչ Պապ շուրջ եկեալ յամէր ի ճանապարհին վասն վայրացն անգիտութեան՝ սոքա անցեալ ընդ կիրճ մի յառաջեցին քան զնա ընդ կարճոյ ճանապարհ, և զօրահատոյց լեալ կալան զգլուխս երկուց ճանապարհաց, որ իբր երեք հազար հրասախաւ հեռի էին ի միմեանց, և կային պատրաստ ունել զՊապ յանցանել նորա ընդ մին կամ ընդ միւսն, զի ոչ գոյր այլ ուղի։ Ըստ դիպաց իմն վրիպէր յոյս նոցա։ Ճանապարհորդ ոմն որ մտանելոց էր յերկիր մեր՝ գտեալ զերկոսին պողոտայսն փակեալս ի դարանակալաց անտի՝ կալաւ, առ խոյս տալոյ ի զօրացն՝ արահետ մի Թաւուտ, և հասանէր առ Պապեանս որ առնուին հանգիստ։ Ածեալ սա առ Թագաւորն՝ ազդ արար նմա ի ծածուկ զոր տեսեալն էր, և արգելաւ առ նմա անվնաս։ Պապ առանց ի վեր հանելոյ ումեք զոր լուաւն՝ արձակէր հեծեալ մի ընդ աջոյ ճանապարհն, հրաման տուեալ նմա պատրաստել վանս և պաշար։ Իբրև մեկնեցաւ նա՝ ընդ ձախոյ ճանապարհն առաքէր զայլ ոք որ չէր գիտակ հրամանին տուելոյ ընկերին։ Յետ այսպիսի և այսչափ զգուշութեան, ոչինչ դանդաղէր առաջնորդութեամբ ճանապարհորդին ունել զարահետն, ընդ որ եկեալ էր այրն և ընդ որ գրաստ մի բեռնաբարձ հազիւ մարթէր անցանել։ Այսպէս Թողոյր զհետամուտսն զկնի իւր, որոց կալեալ զերկոսին արսն արձակեալս իբրև յառաջապահ ի խաբել զնոսա՝ համարէին եթէ ոչ այլ ինչ մնայր նոցա առնել՝ բայց տարածել զբազուկս առ զբռամբ ածելոյ զօրսն։ Մինչ նոքա կային մնային՝ Պապ հասանէր ողջամբ յերկիր իւր։

Ընկալաւ զնա ժողովուրդն ցնծալից ուրախութեամբ, և Պապ յանդգէտս լեալ դաւաճանութեանն նիւթելոյ նմա՝ կայր մնայր ի Հաւատսն որ առ մեզ։ Դանիէլն և Բարզիմերէս լինէին առակ նշաւակի ի դարձին իւրեանց ձեռնունայն, իբրև վատք ոմանք և ապաժամանք։ Զառաջինն յապուշ հարեալ կացին արքն, այլ զօրէն օձից պահէին զթոյնսն՝ արկանել ի նա յորոյ ի խաբս անկան։

**14.** Առ ի թեթևացուցանել զանմիտ սպարանսն և նուազեցուցանել զպարծանս խորագէտ հնարից թագաւորին որ արկ գնոսա յոյն՝ տային դիւրահաւան կայսեր անհեդեդ կարծիս զթագաւորէն, որպէս թէ լեալ միջամուխ գաղտնեաց դիւթութեանն Կիրկեայ՝ գիտէր կերպս ի կերպս լինել և արկանել զորս կամէրն՝ ի մտաց և ի զգայութենէ։ Առ ի ճողոպրելոյ ի ձեռաց մերոց՝ արկ, ասէին, ի կիր զարուեստ կախարդելոյ զաչս, և առ զանմարմնոյ իրիք բնութիւն։ Ո՛րպիսի հոգ և երկիւղ, եթէ մնասցէ կենդանի այրն, որ այնպէս ծաղր արար զմեզ։ Այս բանք գրգռեցին զկայսրն յանհնարին ատելութիւն. զոր ամենայն խորհէին հնարս նենգութեան, զի բռնութեամբ կամ գաղտնի բարձցեն զկեանս թագաւորին Հայոց։ Տրայիանոս որ յայնժամ գործակալ մեր էր ի Հայս և յանձանձիչ իրաց պատերազմի՝ յանձն լինէր գործն ծածուկ նամակաւ։ Ազգի ազգի հնարիւք շուրջ պաշարեալ սորա զթագաւորն՝ մերթ ցուցանէր նմա թուղթս բարեկամութեան ի Վաղեսէ, մերթ երթայր լինել նմա սեղանակից։ Հուսկ ուրեմն կարգեալ յարդարեալ զամենայն՝ հրաւիրէր զնա յընթրիս հանդիսիւ մեծարանաց և պատուոյ։ Պապ ազատ ի կասկածանաց եկն ի կոչունսն առանց վարանելոյ, և տուաւ նմա առաջին բարձն ի բազմել։ Սեղան մեծասպաս, բազմախորտիկ կայր առաջի, տաճարն հնչէր ի ձայն երգոց արուեստականաց։ Այն ինչ սկսան բազմականքն զուարթանալ ի գինւոյ՝ ել արտաքս կոչնատէրն (Տրայիանոս) իբր յապաբահէ պատճառաւ։ Յայնժամ մի ոմն ի բարբարոս զօրականէ սակրաւորացն մտեալ ի տաճարն սուսեր ի ձեռն, խժդժագոյն երեսօք՝ անկանէր ի վերայ մանուկ թագաւորին, զի մի մարթասցէ ելանել ըստ դուռնն, զոր և կանխեալ աղխեալ էր զգուշութեամբ։ Պապ կանգնեցաւ ի վերայ գահոյիցն, և հանեալ զդաշոյնն կամէր պաշտպանել անձին ոգւով չափ, այլ հարեալ ի կուրծսն՝ իբրև սպանդ տապալէր ընդ գետին, բազմապատիկ հարուածովք խոցոտեալ։ Այսպէս անագորոյն նենգութեամբ ի կոչունս, յորմէ Եւքսինոսն Պոնտոս անգամ ակն ածէ՝ դէմ յանդիման հիւրամեծարն աստուածութեան, փրփրեալ հեղաւ արիւն օտար ի սեղանի առն հռոմայեցւոյ, իբրև վերջին բաժակ ի յագուրդ կոչնականաց որ ահաբեկ լեալ

ցրուէին։ Ողբացէ, եթէ իցէ հնար հրաժարելոյ ի կենաց ողբալ, ընդ այս գործ անիրաւութեան Փաբրիկիոսն Լուսկինոս, որ թէպէտև գիտէր, եթէ որպիսի աւերածոյ լինելոյ էին պատճառք արշաւանք Պիւռոսի յԻտալիա՝ ազնուական մտօք զՆեմոքարէս, կամ որպէս այլք ասեն, զՆիկիաս տաճարապետ թագաւորին, որ խոստանայրն մատուցանել նմա դեղ մահու՝ ոչ միայն մերժէր, այլև գաղտ ազդ առնէր նմա զգոյշ լինել յիւրոց մտերմաց. ա՛յնչափ նուիրական էր նոցան թշնամւոյն անգամ ի դարուն յայնմիկ ուղղութեան և արդարութեան։ Ոմանք կամին ապաքէն արդարացուցանել զանագորոյն ոճիրն որ եղև առ Պապ օրինակաւ Սերտորիոսի. այլ են սոքա սուտակապպասք, ոգէտք այնմ զոր Դեմոսթենէսն ասէ, պարծանք աշխարհին Յունաց, եթէ Ո՛չ օրինակն և ոչ անպատիժն մնալ ուրուք մարթացան երբէք՝ զոր ինչ հակառակն է իրաւանց՝ իրաւացուցանել» (Ամմ. Լ. 1)։

Այս՝ ըստ Ամմիանու բարբարոսաց անգամ զզուելի դաւաճանութիւն, զոր այնպէս քստմնելով կը պատմէ հեթանոս պատմիչն՝ Գաթըրճեան, անտարակոյս ի շնորհս ուղղափառութեանն Տերենտի (քանզի չէր նա արիոսեան) կը թուի ջանալ պատ ի պատ բանիւք արդարացուցանել, հաւատալով կեղակարծ աւանդութեան մը զոր ազգային կ՚անուանէ։ Ըստ Գաթըրճեանի՝ Տերենտ, բարեպաշտ և ուղղափառ, որ հակառակ էր Պապայ, անտարակոյս սպաննելուն համար զՆերսէս յանիրաւի և խանգարելուն Ներսիսէ դրուած ամէն կարգ և կանոն՝ չհամարձակելով յայտնել զայսոսիկ արիանոս կայսեր, որ արդէն ցանկացող էր աւերման ուղղափառ եկեղեցեաց՝ կ՚իմացունէր նմա միայն ամբարտաւան թագաւորին անգթութիւններն, մինչև ստիպել կայսեր կոչել զնա հնարիւք, այլովքն հանդերձ.—«Մինչդեռ յԱսորիս էր, ասէ, կայսր՝ ստէպ պատգամ առ նա հասանէր ի կողմանց Հայոց աշխարհին վասն Պապայ արքայի։ Տերենտիոս դուքս զօրացն ի Հայս, այր բարեպաշտօն և ճշմարտահաւատ, կասկածանօք և հակառակութեամբ իմն էր ընդ արքային Հայոց, թերևս վասն տարապարտ սպանման եպիսկոպոսապետի աշխարհին մեծին Ներսիսի, զոր ինքնին նիւթեաց թագաւորն, և վասն խանգարման կարգացն լաւութեան, և բազումք իսկ ի Հայոց անտի միաբան էին ընդ նմա թերևս վասն նորին պատճառանաց։ Բայց Տերենտեայ չէր մարթ զբուն պատճառս իրացն մերկանալ առաջի արիանոս կայսեր, որ յառաջ քան զամենայն ընդ կորուստ ուղղափառ եկեղեցեացն կամէր։ Նատ համարէր Տերենտ ցուցանել կայսեր զամբարհաւաճութիւն մանկանն թագաւորի և զանագորունութիւնն առ հնազանդեալսն իւր և զսպանութիւնսն» (Գաթըրճ.

Պատմ. Տիեզ. Բ. 506)։ Ամչնալով սակայն Գաթրրճեան յարդարախօսութենէ ժամանակակից հեթանոս պատմչին, որ պատմութեան ծածկագոյն երեսը մերկանալով կը դնէ մեր առջև՝ կը յաւելու և վախճանի սա խոստովանութիւնը. «Այսպիսի իմն օրհասիւ վախճանէր թագաւորն մանուկ, որում համակ ջատագով մտեալ արդարացուցանէ հռոմէական պատմագիրն, հակառակ վկայութեան տոհմային պատմութեանն (լաւ ևս լինէր՝ եթէ ասէր պատմութեան Խորենացւոյն), որ նախ ապստամբեալ զնա դնէ ի կայսերէ (հակառակ պատմութեան Ամմիանու, որ հաւատարիմ մնացած կը դնէ զՊապ Հռոմայեցւոց մինչև ի մահ իւր)։ Այլ որպէս ինչ և իրքն իցեն՝ սակայն լի էր անիրաւութեամբ նենգաւոր գործ սպանմանն յընթրիս անդ, որ և յՆեքսինոսն (հիւրընկալն) Պոնտոս, առէ պատմագիրն, ակնածելի է։ Այն իսկ մանաւանդ աղէտք են, զի այնպիսի այր որպիսի Տրայիանոս կոմս էր՝ լինի գործի հնարաւորութեան անարգագոյնն և կասկածոտն կայսեր, և գտանէր նմանող Մարկեղիանեայ ումեմն՝ որ յարևմուտս զԳաբինիոս զարքայ Կուադայ անդէն ի նմին ամի ետ սպանանել ի հացի» (Գաթըրճ. Անդ)։

**15.** Պապայ սպանման արդիւնքն եղաւ ծանր ոչ Հայոց համար միայն, այլ և Հռոմայեցւոց։ Վաղէս, որ առ երկիւղի կորուսանելոյ զՀայաստան չխղճեց տալ խողխողել յընթրիս զերիտասարդ թագաւոր նորա յանիրաւի՝ յետ ոչ աւելի քան երկուց ամաց ստիպեցաւ ելլել կորակոր այն երկրէն, զոր իբր ի չորեքհարիւր ամաց հետէ այնչափ խնամով և կորստեամբք պահած էին նախնիք նորա։ Արդար արեան հեղման ահաւոր փոխարէն։ Շապուհ որ կը ջանար յանկուցանել յինքն զՊապ, մանաւանդ յետ պրծելոյ նորա թակարդէն զոր լարած էր նմա Վաղէս՝ տրտմեցաւ յոյժ, լսելով զմահ նորա, և տեսնելով թէ Հռոմայեցւոց ազդեցութիւնը կը զօրանար ի Հայս առ նոր թագաւորաւն փութով մեծ զօրավարին Մուշեղի, որ կ'ամրացունէր զերկիրն զինուորական նոր պատրաստութիւններով, ինչպէս պիտի տեսնենք՝ խորհեցաւ այլ հնարս։ Իբրև վերջին դարման բառնալոյ մշտնջենաւոր գժտութեան և պատերազմներու պատճառն ի մէջ երկուց ազգաց ի պատճառս Հայոց՝ կ'առաջարկէ Վաղեսի ջնջել Հայոց թագաւորութիւնը և բաժնել զերկիրն ի մէջ իւրեանց։ Վաղէս կը մերժէ առաջարկութիւնը. բայց պատգամաւորք նորա կ'ընդունին բաժանման յատակագիծը զոր Շապուհ կը դնէ առաջի նոցա, տալով փոքր ինչ մասն կայսեր և զմեծագոյն մասն ինքեան պահելով։ Թէպէտ Վաղէս կը մերժէ վաւերացունել իւր պատգամաւորներուն ինքնակամ գործը և կը պատրաստուի ի պատերազմ՝ բայց Գոթաց ապստամբութեան պատ-

ճառաւ յարևմուտս՝ կ'ստիպուի ընդունել զպայմանն, և կը հանէ զօրքն Հայաստանէ։ Այս երկրորդ անգամն էր, որ Հայք Հռոմայեցիներէն, իրենց հին դաշնակիցներէն դաշամբ կը մատնուէին Սասանեանց։ Թէ ինչ եղաւ այսր հետևանքն ի Հայս՝ պիտի տեսնենք ի Բուզանդայ. բայց լսենք նախ Ամմիանու, որ այն մեծ փոփոխութիւնը կը պատմէ մեզ մանր. «Այս անցք (սպանման Պապայ) որ անցին ի Հայս՝ չթուեցան հաճոյ Շապհոյ, որ ջանայր հնարէր յիւնքըն կորզել զՊապ. ընդ այն մանաւանդ տխրէր, զի իբր նորա ձախող էին, մինչ Հռոմայեցւոցն պսակէին յաջողութեամբ։ Խռովեալ տագնապեալ յանձն իւր՝ առաքէր զԱրշակ ոմն հրեշտակութեամբ առ կայսր, հաւանեցուցանել զնա բառնալ զթագաւորութիւնն Հայոց, որ առիթն լեալ էր անդուլ անդադար կռուոց ի մէջ ազգացն երկոցունց։ Առ այս տայր պատասխանի Վաղէս օրինակ զայս. Զառնում, ասէ, յանձն բառնալ ինչ ի դաշանցն կռւոց, գուն եդեալ խմովսանն պահել զպայմանսն։ Պատասխանի արդարև ազնուական և անյողդողդ։ Մօտ ի կատարած կոյս ձմերայնոյն գրէր Շապուհ նամակ ուռուցեալ բանիւք ամբարտաւանութեան։ Ոչ այլով իւիք, ասէ, հնար իցէ խլել յարմատոյ զպատճառս կռուոյն՝ եթէ ոչ վրճռով արանց որ գիտակն իցեն դաշինն կռւոյ ընդ Յովիանու, քանզի գիտէր եթէ բազմաց ի նոցանէ վճարեալ էր ի կենաց։ Իբրև ծանրացաւ վէճն՝ կայսր որ չէր յաջողակ ի գտանել հնարս, սակայն գիտէր անսալ ազնուագոյն խրատուց՝ լաւ համարեցաւ տալ հրաման Վիկտոսի զօրավարի հեծելազօրուն և Ուրբիկեայ կոմսի Միջագետաց երթալ ի Պարսս, տալ զվերջին պատգամ կայսեր, թէ Շապուհ որ պարծէրն լինել արդար և իւրովն միայն լինել գոհ՝ ժըլատութեամբ ջանայր կորզել զՀայս, որոց ստէպ խոստումն տուեալ էր՝ թողուլ զնոսա ինքնօրէնս աղիկամիս։ Սպառնայր կայսրն առնուլ զէն, եթէ Շապուհ դրժիցէ ուխտին, կամ յայլ ինչ նմին հակառակ մտաբերիցէ։ Այս պատգամաւորութիւն էր արդարև ուղիղ և ըստ օրինաց. այլ դեսպանք Վաղեսի առանց սպասելոյ հրամանի ի կայսերէ, հաճեալ ընդ բաժանումնն՝ յանձն առնուին ունել դոյզըն ինչ մասն յերկրէն Հայոց, որպէս առաջի առնէր նոցա թագաւորն։ Յետ դարձին նոցա գայր հասանէր Սուրէն, որ երկրորդն էր իշխանութեամբ զկնի թագաւորին, մատուցանել կայսեր զբաժինն՝ զոր դեսպանացն մերոց առեալ էր յանձն։ Ընդունելութիւն մեծ լինէր պատգամաւորին, այլ արձակեցաւ նա չհասեալ որում ցանկայրն, և լինէր երկուստեք պատրաստութիւն պատերազմի։ Ի մտի եդեալ էր կայսեր ի կակղել ձմերայնոյն արշաւել ի Պարսս երիւք բանակօք, ուստի և լինէր բանագնաց ընդ Սկիւթացիսն՝ գալ նմա

ի Թիկունս օգնականութեան։ Զհասեալ Շապհոյ որում վայրապար ունէր ակն՝ բրդէր ի սրտմտութիւն բարկութեան, լուեալ մանաւանդ, եթէ կայր պատրաստի ի մարտ՝ առ ոչինչ գրեալ զցասումն նորա տայր հրաման Սուրենայ, ըստ պայմանին զոր Վիկտորի կոմսի և Ուրբկայ յանձն առեալ էր՝ երթալ գրաւել զիւր բաժինն, և եթէ ընդդէմ ոք դառնայցէ՝ տալ պատերազմ։ Գործն ըստ հրամանին առնոյր կատարումն, և չեղև մեզ հնար արգելուլ կամ առնուլ վրէժս, զի Վաղեսի պատերազմ մեծ առաջի կայր ի Գոթաց որ արշաւեցին ի Թրակիա։... Համբաւ ձախողանացն զոր առնոյր Վաղէս ի Թրակիայ՝ արկին զնա ի վարանս։ Իսկ և իսկ հրաման տայ Վիկտորի իշխանի հեծելազօրուն երթալ ի Պարսս, որպէս զիարդ և մարթէր՝ մտանել ի դաշն հաւանութեան վասն աշխարհին Հայոց. և մինչ ինքն հանդերձէր երթալ յԱնտիոքայ ի Կոստանդնուպոլիս՝ առաքէր առաջի իւր զՊրոփոտուրոս և զՏրայիանոս, երկոքին ևս մեծամիտք և անհմուտք իրաց պատերազմի։ Սոքա փոխանակ նուաճեցուցանելոյ զբազմութիւն թշնամւոյն մանր մանր ճակատուք՝ յանխորհուրդս իմն հանին ի ճակատ զլեգէոնսն ածեալս ի Հայոց, քաջք արդարև, այլ վասն սակաւութեան իւրեանց անբաւականք ճակատեալ կալ առաջի թշնամւոյն, որ յաջողութեամբն խրոխտայր և բազմութեամբն լցեալ ողողեալ էր զլերինս և զդաշտս առհասարակ» (Ամմ. Լ. 2, ԼԱ. 7)։

**16.** Գանք այժմ լսել ի Բուզանդայ՝ ինչ որ պատահեցաւ ի Հայս զկնի սպանմանն Պապայ։ Բուզանդ չունի ինչ որ յիշեցինք յԱմմիանոսէ, այն է ինչ որ յետ այն աղետալի սպանման անցան ի մէջ Վաղեսի և Շապհոյ, և զարդիւնս բանագնացութեանցն ի վնաս Հայոց. կ'ակնարկէ սակայն Ամմիանու պատմութեան գլխաւոր կէտերն, այն է զթողուլն հռոմէական զօրուն զՀայս, զգալն Սուրենայ և զանկանելն Հայոց ընդ իշխանութեամբ Պարսից, հանդերձ ներքին դիպօք զորս չունի Ամմիանոս։ Ահա բովանդակութիւն պատմութեան Բուզանդայ։ Արդէն 376-ին, իբր երեք ամօք յետոյ քան զմահն Պապայ, չկան հռոմայեցի ոչ զօրք և ոչ զօրավար ի Հայս, ուստի և Մանուէլ սպարապետ, յաջորդն Մուշեղի, կը համարձակի մերժել Հռոմայեցիներէն տրուած վերջին թագաւորն զՎարազդատ, և կը կոչէ զՊարսիկս (377)։ Սուրէն կու գայ 10 հազարաւ ոչ իբրև թշնամի, այլ իբրև բարեկամ։ Բայց այս վիճակը չտևեր երկար։ Գրեթէ նոյն տարին Հայք կ'ապստամբին, Սուրէն կը մերժուի քսութեամբ Մերուժանայ։ Այսպէս իբր եօթը տարի (Բուզ. Ե. ԽԲ.), այն է 377—383, կամ ի մերժմանէն Վարազդատայ մինչև ի մահն Մանուէլի, Հայք կը մնան ինքնօրէն,

ու ընդ իշխանութեամբ Պարսից, մանաւանդ թէ են ստէպ ի պատերազմի ընդ նոսա (Բուզ. Ե. ԼԹ, Խ, ԽԱ, ԽԳ.), և ոչ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց. քանզի Թէոդոս մեծ, յաջորդն Վաղեսի (379—395) զբաղեալ յարևմուտս գոթական պատերազմաւ՝ հազիւ ի դադարել այն պատերազմին (382) ունեցաւ ժամանակ դարձունել իւր ուշադրութիւնն յարևելս։ 383-ին կ'սկսին յիշուիլ ի մատենագրաց ոմանց Դ. դարու (Որոս. Պակատ. Կղաւդ. Լիբան. ըստ Գաթըրճեանի Տիեզ. Պատմ. Բ. 520, Ծան. 1) յաղթութիւնք ինչ զօրավարաց Թէոդոսի ի Միջագետս։ Դարձեալ Թեմիստիոսի փիլիսոփայի և ճարտարախօսի ճառէն, զոր 393-ին խօսեցաւ նա առաջի Թէոդոսի՝ յայտնի է թէ մինչև այն թուականն Հայք չունէին ինչ աղերս բարեկամութեան ընդ Հռոմայեցիս. «Հայք, ասէ ճառն, յետս կացեալ են ի Հռոմայեցւոց... այլ որպէս յաղթեցաք Գթաց առանց արեան և արտասուաց՝... այսպէս և զՀայս ընկալցուք միւսանգամ» (տե. Գաթըրճ. Անդ. 519, Ծան. 2)։ Կը փափաքէին սակայն Հայք մտանել ընդ իշխանութեամբ Յունաց, և այս անտի մանաւանդ յայտնի է, զի Մանուէլ ի մահուան իւրում (383) գրով կը յանձնէ զՀայս Թէոդոսի (Բուզ. Ե. ԽԴ.). բայց կը խաբուի։ Հայոց մնալն այնպէս ինքնօրէն չէր հաճոյ ոչ Պարսից միայն, այլև Հռոմայեցւոց. ուստի և Թէոդոս (384) ի դաշինսն ընդ Շապհոյ Գ. դիւրաւ յանձն առաւ բաժանել զՀայս, կամ մանաւանդ վաւերացուցանել՝ ինչ որ արդէն եղած էր առ Վաղեսիւ, առնլով Մեծին Հայոց արևմտեան փոքրագոյն մասը, և թողլով Պարսից մեծագոյնը։ Այսպէս ինչ որ հեթանոսն Յուլիանոս և արիանոսն Վաղէս յանձն առին ի հարկէ առ տկարութեան՝ ուղղափառն Թէոդոս, զոր այնպէս փառօք կը տօնէ Հայաստանեայց եկեղեցին՝ յանձն առաւ, մինչ էր հզօրագոյն—մատնել ի ձեռս Պարսից խժաբարոյից փոքր քրիստոնեայ ժողովուրդ մի, ուսմամբ, բարոյիւք և եկեղեցեաւ դուստր յունականին, պատուար ի մէջ արևմտեան քաղաքակրթութեան և արևելեան բիրտ բարբարոսութեան։ Հայաստան է այնուհետև երկու փոքր թագաւորութիւն, կրծեալ և գձձեալ, որպէս ասէ Բուզանդ, արևմտեան հռոմէական մասն ընդ Արշակաւ վերջնով որդւով Պապայ, և արևելեան պարսկականն՝ ընդ Խոսրովաւ։ Մինչև ցայս վայր, այն է մինչև 385 կամ 386, կը բերէ Բուզանդ իւր պատմութիւնը, զոր կ'առնունք ահա մի ըստ միոջէ։

Յետ սպանմանն Պապայ, ըստ Բուզանդայ, նախարարք ամենայն, ընդ որս մանաւանդ սպարապետն Մուշեղ, կը զայրանան գործուած անզգամութեան վրայ. բայց տեսնելով զանձինս անկարող խնդրել վրէժ հին դաշնակից հզօր կայսրութենէն, նաև լաւ

համարելով հնազանդել քրիստոնեայ ազգի քան կրակապաշտ Պարսից՝ կը լուեն, և կ՚ընդունին ի Վաղեսէ փոխանակ սպանուած մանուկ թագաւորին միւս ևս թագաւոր մանուկ, ոչ տիօքն միայն, այլև մտօքն և բարուք և հանճարով, զոր Բուզանդ կը նկարագրէ այսպէս. «Եւ ժողովեցան եկին ամենայն իշխանքն Հայոց մեծամեծք ի մի վայր ի միասին, և Մուշեղ սպարապետն և Հայր մարդպետ, և ամենայն իշխանքն ասէին. Զինչ տրասցուք կամ զինչ գործեսցուք. խնդրեսցուք զվրէժ թագաւորին մերոյ, թէ ոչ։ Եւ ապա հաստատեցաւ այս բան ի խորհրդեանն, և ասեն. Ոչ կարեմք հեթանոսաց Պարսկաց ի ծառայութիւն մտանել, և թշնամի առնել զթագաւորն Յունաց, և ոչ զերկոսեան թշնամի առնել, և ոչ առանց միոյ թիկանց կարեմք կեալ։ Ապա եկաց այս բան ի խորհրդին, թէ զինչ եղև՝ առհա եղև, թող ծառայեսցուք թագաւորին Յունաց. կացցուք ի հնազանդութեան իշխանութեան թագաւորութեան նոցա. զխարդ և կամք իցեն թագաւորութեանն Յունաց՝ արասցեն մեզ։ Եւ ոչ ինչ արկին ի միտ կամ վրէժ խնդրել, կամ այլ ազգ ինչ իրս առնել, այլ անցին կացին լուռ։ Եւ եղև յետ մահուն Պապայ թագաւորեցոյց թագաւորն Յունաց զՎարազդատ ումն ի նմին տոհմէն Արշակունի ի վերայ աշխարհին Հայոց։ Եկն բազում շքով եմուտ յերկիրն Հայոց և թագաւորեաց յերկրին Հայոց։ Եւ էր նա մանուկ յաւուրց, լի արութեամբ, կորովի ձեռօք, քաջ սրտիւ, և ի մտաց թեթև, մանկաբարոյ, տղայահանճար, մանկամիտ։ Բայց սակայն իբրև տեսին զնա՝ ժողովեցան առ նա ամենայն ազգք Հայոց, մեծամեծ նախարարք, և կամեցեալ խնդացին զթագաւորելն նորա ի վերայ իւրեանց» (Բուզ. Ե. ԼԳ, ԼԴ.)։

**17**. Ի հանդէս զինուորական հանճարոյն Մուշեղի և փութոյ նորա ի պայծառութիւն և յապահովութիւն երկրին՝ Բուզանդ կը դնէ հոս նոր իմն հնարս, յոր ձեռնարկեց սպարապետն քաջ ի զգուշութիւն վտանգին, զոր կ՚սպառնային Հայաստանի անկախութեան բանադնացութիւնք ի մէջ երկուց մեծ տէրութեանց. «Սպարապետն Հայոց Մուշեղ, ասէ, առաջնորդէր Հայոց, և զգուշանայր զսահմանօքն, որպէս սովոր էր կարգել զաշխարհ մեծապէս, և խրատ բարեաց թագաւորին մանկանն Վարազդատայ մատուցանէր։ Եւ հոգայր հանապազ վասն թագաւորութեան աշխարհին Հայոց, թէ զիարդ կամ որպէս չէն լինել մարթասցէ, և հանապազ երկս արկանէր բարեխորհուրդն, զի հաստատուն կալ կարասցէ թագաւորութիւնն։ Խորհէր ևս ընդ իշխանսն Յունաց, և նոքօք ընդ կայսերն, թէ պարտ է նոցա քաղաք շինել ի մի մի գաւառսն, որ՝ մին մի քաղաքըս, որ՝ երկուս երկուս, ամուրս պարսպաւորս զօրանիստս հաստատել

ընդ ամենայն երկիրն Հայոց, մինչև ի Գանձակ սահման երկիրն որ Պարսից կուսէ էր, և զամենայն ազատսն Հայոց կայսերական թոշակօքն զինուորել, սոյնպէս և զօրաց երկրին Հայոց. զի այսպէս ամենայն զգուշութիւն լիցի առ ի թշնամեաց իւրեանց ի զօրացն Պարսից։ Եւ թագաւորն Յունաց յանձին ունէր մեծաւ խնդութեամբ առնել զայս, զի այսու ամենայնիւ աշխարհն հաստատուն լիցի և անշարժ ի հիմանէն, զի մի կարասցէ թագաւորն Պարսից յիւր վարել զաշխարհն Հայոց» (Բուզ. Ե. ԼԴ.)։

**18.** Բայց հաւատարիմն Մուշեղ առաւ ընդ հուպ իւր անգութ վաստակոց հատուցումը։ Վարազդատ ի քսութենէ իւր դայեկին Բատայ Սահառունւոյ, որ կամէր յափշտակել սպարապետութիւնն՝ դաւով սպաննեց զՄուշեղ ի խնճոյս.—«Իբրև տեսանէին զթագաւորն Հայոց զՎարազդատ մեծ նախարարքն Հայոց, թէ մանուկ բանսերթուկ է, զչար ի բարւոյ որոշել չգիտէ՝ սկսան այնուհետև ըստ կամաց իւրեանց վարել զթագաւորն, որպէս և կամէին՝ բանիւք իւրեանց տանէին և բերէին զնա։ Նա առաւել ունկն դնէր մանկտւոյն որ ի տիոց հասակակիցք էին նորա, առաւել քան զծերոցն իմաստնոց որք կարող էին զօգտակար խրատն մատուցանել նմա։ Այլ Բատ, որ նահապետն էր ազգին Սահառունեաց տոհմին, դայեակ սնուցիչ թագաւորին Վարազդատայ՝ կամեցաւ նա զգործ զօրավարութեան սպարապետութեան Մուշեղայ յինքն յափշտակել ի նմանէ։ Վասն այսորիկ սկսաւ քսիս մատուցանել զնմանէ առ թագաւորին Վարազդատայ առ իւրում սանուն և ասել, թէ ի սկզբան ի նախնեացըն հետէ զձեր Արշակունեաց տոհմն Մամիկոնէից է կորուսեալ, զի հակառակորդք ձեր դոքա լեալ են ի բնէ անտի, և համակ զերկիրս Հայոց դոցա է կերեալ, մանաւանդ Մուշեղի, զի այր չար է և նենգաւոր։ Սիրելի է թշնամեաց ձերոց, և ատելի սիրելեաց ձերոց, և համակ ընդ ձեզ նենգաւ է գնացեալ, երկմտութեամբ և դժխեմութեամբ։ Չի ո՞չ այն Մուշեղ է, որ ի թագաւորութեան ժամանակի Պապայ ի պատերազմունսն Պարսից քանիցս անգամ ձեռնհաս եղև սպանանել զՇապուհ արքայն Պարսից՝ և ոչ եսպան, այլ արձակեաց զթշնամին. և երբեմն զկանայս Շապհոյ թագաւորին ի բուռն էարկ, և խնամոտ գթով ժանուարօք արձակեաց զնոսա զհետ Շապհոյ։ Ո՞չ այդ այն Մուշեղն է, որ զՈւռնայր արքայ Աղուանից ի բուռն էարկ. և սպանանել ոչ կամեցաւ, այլ արձակեաց զթշնամին։ Ո՞չ այդ այն Մուշեղ է, զի զարքայն Պապ հրամանաւ դորա և դորին խորհրդովդ զօրավարքն Յունաց սպանին. զի դա ոխացոյց գրգռեալ զարքայն Յունաց ի վերայ թագաւորին Պապայ, մինչև եա սպանանել։ Այլ արժան է մեռանել ի ձեռաց քոց, և չէ

պարտ կեալ դմա. այլ թէ ոչ աճապարեսցես, արքայ, այժմ զհայ երկիրս խորհի լնուլ քաղաքօք, և զօրանիստ առնէ աստ բնակութեան զօրացն Յունաց։ Եւ այնուհետև կամ թագաւորն Յունաց հանէ ի քէն զթագաւորութիւնս Հայոց, կամ այս Մուշեղ սպանանէ զքեզ և ինքն թագաւորէ։ Եւ այսպիսի բանիւք գաղտնի հանապազ զթագաւորն գրգռէին, մինչև հաւանեցաւ ըստ կամաց նոցա զսպարապետն զզօրավարն Հայոց սպանանել։ Ապա խորհուրդ արարին, թէ որպէս ըմբռնել կարասցեն զնա, քանզի մեծապէս երկնչէին ի նմանէ։ Թէ զգայ՝ ասեն, մեծ պատերազմ առնէ, և ոչ ոք կարէ զդէմ քաջութեան նորա ունել, բայց հնարիւք մեքենաւորութեամբ ինչ լինիցի հնար։ Այսպէս սպասէին նմա։ Եւ եղև յաւուր միոջ հրաման ետ Վարազդատ արքայ ընթրիս մեծ գործել և մեծ պատրաստութիւն առնել, և կոչել հրամայեաց յընթրիսն զամենայն աւագս պատուականս և զմեծամեծս և զզօրավարն Մուշեղ։ Պատրաստեալ Վարազդատ արս ընտիրս, հզօրս, զօրեղս, զի կազմ կայցեն գործոյն, հարկանել յանկարծօրէն յանպատրաստից յեղակարծումն ժամու ի վերայ Մուշեղի։ Զնոսա քաջ ուրախ առնէր մեծապէս, և շատ գինի տայր ըմպել և բազում առնէր զքօսումն ուրախութեան։ Արքայն Վարազդատ տայ նշանս յառաջագոյն այնոցիկ զորս էր սպանողն պատրաստեալ, եթէ յորժամ գիտիցէք, թէ քաջ արբեալ իցէ և զմտօք զաւանցեալ յարբեցութենէ սպարապետն Մուշեղ՝ ես յարուցեալ իբրև ի ճեմիշն երթալոյ պատճառաւ, և դուք պատեսջիք զնովաւ։ Եւ եղև իբրև անցին զաւանցին ի գինւոյն ըստ չափ անցանելով, և թագաւորն Վարազդատ պահէր զանձըն ի գինւոյն. իբրև գիտաց Վարազդատ, թէ արդ յարբեցութենէ մտաց ինչ չզգան՝ ինքն յարուցեալ իբրև յապարահէ զանց առնելոյ պատճառաւ, և աւագանին ամենայն բազմականացն յոտն կացին առհասարակ, իբրև նմա պատիւ ինչ տանել։ Եւ յանկարծ արքն որոց էր տուեալ հրաման, երկոտասան այր կից զոյգ զկնի կողմանէ զնմանէ բուռն հարկանէին, վեց այր ի մի բազուկն Մուշեղի, և վեց այր ի միւս բազուկն։ Եւ ընդ ոտն կալ թագաւորին, նայեցեալ ընդ նա եթէ այս ընդէր է, և թագաւորին պատասխանի տուեալ ասէ. Երթ առ Պապ արքայ, հարց և տես, թէ ընդէր է այդ։ Եւ թագաւորն ի դուրս կոյս գնացեալ ելանէր։ Եւ ասէ Մուշեղ. Ի վերայ բազում իմոց վաստակոցն արեան և քրտան և սլաքօքն զքիրտն ջնջելոյ, այս հատուցումն եղև։ Բայց իբրև եհաս ինձ մահս՝ թէ ի վերայ ձիոյ դիպեալ էր....։ Զայս միայն բանս ժամանեաց ասել. և այլ ոչ ինչ ոչ։ Եւ անդէն Բատ Սահառունի, դայեակն արքային Վարազդատայ, զնրանն զոր յիւրում աղ-

*դերն ունէր՝ հանեալ, անցոյց ընդ փողս զօրավարին Մուշեղի, և անդէն ի բաց եհատ զգլուխ նորա։ Եւ բարձին զնա, և տարան զմարմին նորա ի գեւղն իւր» (Բուզ. Ե. ԼԵ.)։ Վարազդատ այս անըզգամութիւնը գործեց անտարակոյս ոչ առանց քաջալերուելու յօրինակէ սպանմանն Պապայ։ Քանի՜ զօրաւոր է օրինակ, մանաւանդ երբ կը տրուի իշխանութենէ։*

*Բուզանդ, որ այնպէս դիւրամէտ է ի հաւատալ դիւական երևոյթներու կախարդանօք, ինչպէս տեսանք ի պատմութեան Պապայ՝ կը ծաղրէ զընտանիս Մուշեղի, թէ հաւատալով հին հայ առասպելին առլեզաց՝ դրին զդի նորա ի տանիս բարձր աշտարակի, յուսալով, թէ վասն զի այր քաջ էր Մուշեղ՝ առլէզք գալով պիտի յարուցանէին զնա լիզելով.—«Եւ եղև իբրև տարան զմարմինն սպարապետին Մուշեղի ի տուն իւր առ ընտանիս իւր՝ ոչ հաւատային ընդանիք նորա, թէպէտև տեսանէին զգլուխ նորուն զատ ի մարմնոյն անտի։ Ձի ասէին. Դորա յանթիւ ճակատ մտեալ էր. և վէր երբէք չէր առեալ. ոչ նետ մի դիպեցաւ երբեք, և ոչ այլոց զինու խոցեալ է զդա։ Իսկ կէսք յառնելոյ ակն ունէին նմա, մինչև զգլուխն անդէն ի կոճեղն կարեալ կցեցին, և հանին եդին ի տանիսն աշտարակի միոյ, ասէին, թէ վասն զի այր քաջ էր՝ առլեզք իջանեն և յարուցանեն զդա։ Պահապան կային և ակն ունէին յառնելոյ, մինչև նեխեցաւ մարմինն. ապա իջուցին յաշտարակէ անտի, և լացին թաղեցին զնա որպէս օրէն էր» (Բուզ. Ե. ԼԶ.)։*

**19.** *Բայց ոչ Բատայ և ոչ Վարազդատայ մնաց վրէժ արեանն Մուշեղի։ Բատ արդարև առաւ սպարապետութիւնը որ Մամիկոնեան ցեղին էր, բայց առ եղեռանէ իւր և սանուն իւրոյ Վարազդատայ։ Մանուէլ և Կոմս անուն երկու եղբարք Մամիկոնեան տոհմէն, գտնուելով ի պատերազմի ուրեք Տապհոյ՝ մեծամեծ քաջութիւններ կը գործեն, բայց ի պարտել Պարսից զօրուն և փախչել՝ սոքա ևս երկու եղբարք փախչելով կու գան ի Հայս։ Մանուէլ որ երիցագոյնն էր Մամիկոնեան ազգին՝ առաւ ոչ միայն նահապետութիւնը որ տրուած էր Վաչէ անուն ումեմն նոյն ցեղէն, այլև սպարապետութիւնն, իբրև իւր ցեղին սեպհական, առանց հրամանի Վարազդատայ։ Այս պատճառաւ կ'սկսի ի մէջ Մանուէլի և Վարազդատայ սաստիկ վէճ։ Մանուէլ յետ յիշեցուցանելոյ Վարազդատայ իւր և իւր նախնեաց վաստակը և հաւատարմութիւնն առ Արշակունիս՝ կը յիշեցունէ նմա ապերախտութիւնը, որով տուաւ նա խողխողել զՄուշեղ ի բազմականին, և խրատ կու տայ նմա մեկնել աշխարհէն, սպառնալով նմա մահ։ Մանուէլի այս համարձակութիւնն—մերժել կայսրէն տրուած թագաւորը՝ չէր անտարա-*

կոյս առանց թելադրութեան Շապհոյ, ընդ որում սկսած էին Հայք մտերմանալ յետ մեկնելոյն Հռոմայեցւոց յերկրէն։ Վախճան այս բանակռուութեան եղաւ արիւնահեղ պատերազմ, ուր յաղթեցին Մանուէլեանք, և Վարազդատ խոյս տուաւ ի Յոյնս, և Բատ, քուն Վարազդատայ, բռնուելով սպանուեցաւ չարաչար հանդերձ որդւովքն (374).—«Ապա կացոյց թագաւորն Վարազդատ ի գործ զօրավարութեան սպարապետութեանն զԲատ նահապետն Սահառունեաց տոհմին, որ էր իւր դայեակ, բանսարկու քուն, սպանողն Մուշեղի։ Եւ էր նա սպարապետ փոխանակ նորա, զօրավար ամենայն Հայոց։ Եւ ազգին Մամիկոնեան տոհմին տանուտէր նահապետ կացոյց թագաւորն՝ Վաչէ անուն ումն ի նմին տոհմէ։ Յայնմ ժամանակի դարձան ի գերութենէն, զոր տարեալ էր Շապհոյ արքային՝ երկու եղբարք ի Մամիկոնեան տոհմէն, անուն միումն Մանուէլ, և անուն երկրորդին Կոմս։ Քանզի զայն ժամանակաւ թագաւորին Պարսից Սասանականին տուեալ էր պատերազմ ընդ մեծ թագաւորին Քուշանաց ընդ Արշակունւոյն որ նստէր ի Բահլ քաղաքին։ Եւ իբրև երթային զօրքն Պարսից ի Քուշանացն պատերազմն, ապա և զմարդիկ գերութեանն որ ի Հայոցն էին՝ թագաւորն Պարսից յղէր ի պատերազմ ընդ իւր զօրսն. և Մանուէլս այս երթայր ընդ նոսա հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ։ Եւ իբրև եղեն խառնուրդք երկոցունց գնդացն ընդ միմեանս՝ ապա ի պարտութիւն մատնեցան զօրքն Պարսից յերեսաց զօրացն Քուշանաց, դարձան ի փախուստ անհնարին հարուածովք. բայց Մանուէլ որդի Արտաշինայ ի Մամիկոնեան տոհմէն հանդերձ եղբարբն իւրով Կոմսիւ բազում քաջութիւնս կատարեալ ի նմին ճակատուն՝ հետիոտս ապրէին։ Սակայն թագաւորին Պարսից բազում տրտմութիւն լինէր յաղագս իւրոց զօրաց կոտորածոյն, և արձակեաց յերկիրն իւրեանց զՄանուէլ և զԿոմս, որոց գնացեալք գային յիւրեանց երկիրն, և էին հետիոտք երկոքին եղբարքն, և էին երկոքեան մեծք և անհեդեդք, երկոքեան անձնեայք սկայազունք։ Մինչդեռ գային ի ճանապարհի՝ ոչ կարէր Մանուէլն գնալ, զի ոտիւքն ցաւած էր. ապա Կոմս եղբայր իւր ստանձնեալ առեալ բառնայր, և տասն տասն խրասախ բերէր ըստ անձին զայնչափ այրն զանհեդեդ զանարի, եկն եբեր յերկիրս Հայոց։ Իբրև եկն եհաս յերկիրն Հայոց Մանուէլ եղբարբն իւրով Կոմսիւ հանդերձ, իբրև ետես զնա Վաչէն որ յառաջն էր լեալ նահապետ՝ ետ ցնա զպատիւ իշխանութեանն զոր առեալ էր ի թագաւորէն Վարազդատայ, քանզի էր նա երէց յազգին, և Մանուէլ ունէր զնահապետութեան ազգին տանուտէրութեան պատիւն, և Վաչէն լինէր երկրորդ։ Իսկ յորժամ եհաս

ծկաց Մանուէլն ի փառս տէրութեան իւրոյ՝ առանց հրամանի Թագաւորին Վարազդատայ յինքն յափշտակեաց զզօրավարութեանն զսպարապետութիւնն, զի այն ինչ զոր իւրոց նախնեացն ի բնէն կալեալ էր ի սկզբանէն, և զոր արքայն Վարազդատ շնորհ առնէր իւրում դայեկին Բատայ՝ զայն Մանուէլ յինքն հանեալ ունէր։ Յետ այսորիկ պատգամ յղէր սպարապետն Հայոց Մանուէլ առ Թագաւորն Վարազդատ և ասէր, թէ Փոխանակ ամենայն ազգին մերոյ վաստակոցն, զոր ի նախնեացն ի հնոց ժամանակաց հետէ միամտութեամբ առ ձեզ Արշակունիս վաստակեալ եմք, և եդեալ զանձինս մեր ի վերայ ձեր, կեցեալ և մեռեալ եմք ի վերայ ձեր, ամենայն նախնիքն մեր առաջինքն անկան ի պատերազմունս ի վերայ ձեր. Վասակ հայր Մուշեղի կորեաւ ի վերայ Արշակայ արքայի, և մեք հանապազ վաստակեալ և աշխատեալ եմք ի վերայ Թագաւորութեան ազգիդ ձերոյ. և փոխանակ կեանս առնելոյ ընդ վաստակոցն՝ արդ որք ի թշնամեացն ոչ մեռան՝ զայն դուք Արշակունիքդ կոտորեցէք։ Զմուշեղ, այր քաջ, եղբայր իմ, որ ի վերայ ձեր մաշեաց զանձն իւր ի մանկութենէ իւրմէ, վանեաց կոտորեաց զթշնամիս ձեր, և զոր ոչ կարացին թշնամիքն սպանանել՝ դու կալար ի բազմականի խեղդեցեր։ Նա՛ դու չես իսկ Արշակունի, այլ ի պոռնկութենէ եդեալ ես որդի, վասն այդորիկ ոչ ծանեար զվաստակաւորսն Արշակունեաց։ Մեք չեմք իսկ լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր և ի վերոյ քան զձեզ. զի մեր նախնիքն լեալ էին Թագաւորք աշխարհին ճենաց, և վասն եղբարց իւրեանց գրգռութեանն, զի արիւն մեծ անկեալ էր ի վերայ՝ վասն այնր եմք գնացեալք, և վասն բարւոյ հանգստի գտանելոյ՝ եկեալ դադարեալ եմք։ Առաջին Թագաւորքն Արշակունիք գիտէին զմեզ ո՛վ էաք կամ ուստի՛ էաք, այլ դու քանզի չես Արշակունի՝ գնա յաշխարհէս, և մի մեռանիր ի ձեռաց իմոց։ Իսկ Վարազդատ Թագաւորն պատգամ յղէր պատասխանւոյ առ զօրավարն Մանուէլ և ասէր. Ես քանզի եմ Արշակունի՝ եդի զթագ նախնեացն իմոց Արշակունեաց և կալայ զաշխարհն առաջնոց իմոց, և խնդրեցի զվրէժ հօրեղբօրն իմոյ Պապայ ի չարագործ յեղբօրէն քումմէ ի Մուշեղայ. բայց զի դու չես յաշխարհէս յայսմանէ,— զի քեզէն իսկ ասացեր, բաս, յերկրէն յաշխարհէն ճենաց եմք լեալք Թագաւորք ի բնութենէ, և այսր պանդուխտք եմք եկեալք՝— արդ ըստ օրինակի եղբօրն քո մի մեռանիր։ Զի իմ առ բարերարութեան իմոյ արձակեալ լիցի զքեզ. երթ գնա յերկիրն ճենաց. անդ կեաց և անդէն Թագաւորեսջիր յերկրին քում։ Ապա թէ ոչ կամիցիս գնալ՝ մեռանիս ի ձեռաց իմոց որպէս և Մուշեղն մեռաւ։ Յորժամ բազում անգամ երթեալք եկեալք պատ-

գամաւորք բազում խստագոյն քան զխստագոյն բանս կսկծանաց առ միմեանս յղէին՝ յետ այնորիկ ժամադիր միմեանց լինէին՝ պատերազմաւ զմիմեանս տեսանել, և ի հասեալ ժամադիր ժամուն եկեալ տային ընդ միմեանս պատերազմ։ Թագաւորն Վարազդատ առնոյր զզօրն իւրոյ բանակին, և գնայր հասանէր ի տեղի ճակատուն, վառեալ կազմեալ պատրաստեալ ի պատերազմ. սոյնպէս և սա պատրաստագոյն քան զնոսա։ Եւ Մանուէլ սպարապետն հասանէր իւրով գնդաւն ի նոյն տեղի. և ի դաշտին Կարնոյ լինէին խառնուրդք երկոցունց գնդացն ընդ միմեանս բախելոցն։ Թագաւորն Վարազդատ և սպարապետն Մանուէլ զնիզակս առեալ՝ միմեանց յարձակեալ ախոյեանք ելանէին։ Իբրև զաչս ի վեր ամբառնայր արքայն Վարազդատ և նայէր ընդ գալն իւր և տեսանէր զսպարապետն Մանուէլ՝ ի մեծութենէն հասակին և ի շքեղութենէ անձինն, և յամրակուռ յերկաթապատ յոտիցն մինչև ցգլուխն առհասարակ յանվթար զինէն, ի հաստամեստ յանձնէն և ի հաստատուն երիվարէն և յասպազէն վառելոյն յանշարժ սպառազինէն՝ համարեցաւ կշռեաց զնա ի միտս իւր իբրև զլեառն մի բարձր անմատոյց։ Սակայն ածեալ զմահ ընդ միտս՝ յարձակեցաւ, զի այնուհետև չունէր ակն անձինն ապրելոյ։ Սակայն զի մանուկ մարդ էր արքայն Վարազդատ, իբրև ետես զՄանուէլն այնպէս՝ զի չէր ինչ կռուոյ տեղեակ՝ եած զմտաւ թէ ի զրահսն ոչինչ կարիցէ նիզակ գործել, առ ձեռաց կորովութեանն զնիզակն ընդ բերան արկանէր զօրավարին Մանուելի։ Իսկ Մանուէլ բուռն հարկանէր զնիզակէն. հանեալ ի նմանէ զնիզակատէգն՝ ընդ իւր թուրծն հանէր և բազում զիւր թափէր զատամունսն, զնիզակն յինքն հանեալ յարքայէն։ Եւ արքայն Վարազդատ ի փախուստ դառնայր յերեսաց զօրավարին Մանուելի. և անդէն Մանուէլ զտէգ նիզակին ի ձեռինն կալեալ՝ նիզակաւն ի կառափն մատուցեալ ծեծէր զարքայն Վարազդատ, այնպէս տանէր զնա, և անդէն որդիքն Մանուելի յարձակեցան մէն մի նիզակ ի ձեռն, Համայեակն և Արտաշէսն՝ սպանանել զարքայն։ Իսկ Մանուէլ աղաղակէր զկնի որդւոցն իւրոց և ասէր. Ա՜յ, մի լինիք տիրասպանուք։ Եւ նոցա լուեալ զձայն հօրն՝ վաղվաղակի արագ արագ դառնային ի նմանէ. և ի պարտութիւն մատնեցաւ այն օր գունդն արքունական առաջի մանուէլեան գընդին։ Ոչինչ սակաւ այնուհետև սպանեալք անկանէին ընդ երեսս դաշտին, բազում խոցք և խեղք վիրաւորք և բազում նախարարք սատակեցան, բազում փախստեայք հալածական լինէին։... Իսկ այլ զօրքն ամենայն դեռ գային ի կոտորածոյն, զբազումս ձերբակալ արարեալ և կալեալ ածէին։ Եւ զԲատն, արքային Վարազդատայ

գքսուն, զսպանողն Մուշեղի, կալեալ իւր որդւովն առաջի սպարապետին Մանուէլի, և զայլս որք միանգամ գործոյ սատարն լեալ էին՝ ըմբռնէին զամենեսեան առ նա ածէին։ Եւ մեծաւ դատաստանօք դատեցաւ զանօրէնն Բատ սպարապետն Մանուէլ։ Բայց նախ յանդիման նմա հրամայէր փողոտել զորդին նորա, ապա յետոյ զնա գլխատել, և զայլսն կոտորեաց ըստ նմին օրինակի։ Եւ զթագաւորն Վարազդատ հալածեցին յերկրէն ի սահմանացն Հայոց։ Զոգաւ գնաց նա յերկիրն Յունաց. անդ եկաց որչափ և եկեաց, և անդէն մեռաւ» (Բուզ. Ե. Լէ.)։

**20.** Վարազդատայ կուսակից նախարարներէն, որ սպանուեցան այս պատերազմին մէջ՝ Բուզանդ կը յիշէ յանուանէ զԳարեգին նահապետ Ռշտունեաց, ոչ առանց պատճառի։ Այս անձը որ փեսայացած էր Մամիկոնեան տան՝ թողած էր տխուր յիշատակ Մամիկոնեան ազնիւ ցեղին մէջ իւր կնոջն Համազասպուհւոյ եղերելի վախճանին համար, որում գէթ անուղղակի պատճառ եղած էր Գարեգին։ Համազասպեան, եղբայր Համազասպուհւոյ, կը հանդիպի Գարեգնի ի խուան վիրաւորելոց։ Գարեգին կ՚աղաչէ իւր աներոջը խնայել նմա։ Անյիշաչարն Համազասպեան կը հրամայէ վահանաւորաց ոմանց ծածկել զնա վահանօք. բայց Դոնուն անուն ոմն զօրավար սպարակրաց գնդին Մանուէլի տեսնելով զնա և տեղեկանալով, թէ Համազասպենի հրամանաւ կը պահէին զնա վահանաւորքն՝ զայրանալով կ՚սպաննէ զնա, նրբութեամբ իմն հեգնելով Համազասպենի գութը.—«Մինչդեռ գունդն մանուէլեան էին զկնի փախստէիցն՝ գայր հասանէր Համազասպեան սեպուհ մ՚ի Մամիկոնեան տոհմէն, անցանէր առ անկելովք դիակամբքն և առ խոց վիրաւորօքն պատերազմին, և ընդ նոսին ընկեցեալ էր և Գարեգին տէր գաւառին Ռշտունեաց, բայց ողջ կայր։ Այս Գարեգին փեսայ լեալ էր յառաջ նորին Համազասպէի, զքոյր նորին Համազասպուհի ունէր կին։ Եւ իբրև եկն թագաւորն Շապուհ յերկիրն Հայոց՝ սա եթող զկինն իւր և փախեաւ։ Ապա տարան զՀամազասպուհի յերկիրն Տոսպայ, ի քաղաքն ի Վան, հանեալ կախեցին զնա Պարսիկքն զբարձր աշտարակացն որ կայր ի վերայ քարանձաւին, ի կախաղանի սպանին զնա։ Իսկ յայնմ աւուր իբրև անկեալ կայր այն Գարեգին ի մէջ անկելոցն՝ եկն Համազասպ աներ (աներձագ) նորուն անցանել առ նոքօք։ Աղաղակեաց Գարեգին և ասէ. Տէ՛ր Համազասպեան, և զիս տես. հրաման տուր նժոյգ մատուցանել, թող հեծայց։ Եւ ասէ ցնա Համազասպեան. Ո՞վ ես դու։ Եւ ասէ. Ես եմ Գարեգին Ռշտունի։ Եւ ետ հրաման Համազասպեան վահանաւորացն որ ընդ նմա էին, ասէ. Իջէք և դիք զվահանսդ ի վերայ

նորա և պահեցէք։ Եւ ինքն էանց։ Ապա իջին վահանաւորքն, եդեալք զվահանսն ի վերայ, և կային պահէին ըստ հրամանի տուելոյն։ Ապա յետ այսորիկ գայր Դանուն ոմն զամապետ (? գնդապետ) սպարակրացն գնդին Մանուէլեան զօրացն. տեսս զի իջեալ էին վահանաւորք ի վերայ և զԳարեգինն պահէին։ Եհարց ցնոսա, թէ Ո՞վ է այդ, և դուք հի՞մ իջեալ կայք յայդմ տեղւոջ։ Ասեն նոքա, թէ Սա Գարեգին Ռշտունեաց տէր է, և մեզ հրաման ետ Համազասպեան իջանել պահել զսա։ Եւ մեծաւ ցասմամբ զայրանալով ի բարկութիւն մեծ բորբոքէր Դանունն և ասէր. Արդ ուրեմն վերըստին կամի Համազասպեան զսա իւր փեսայ առնել, և զՀամազասպուհի զքոյր իւր տալ սմա կնութեան. վասն այսորիկ անխնայեաց ի դա, պահել հրամայէր։ Եւ անդէն ոտն ածեալ էջ ի ձիոյն, եհան զթուրն, մատուցեալ ի նա պատառ պատառ կոտորեալ, անդէն ցրեալ սատակեաց զնա» (Բուզ. Ե. Լէ.)։

**21**. Ինչպէս տեսանք Ամմիանոսէ՝ Տապուհ տեսնելով, թէ Վաղէս կը դանդաղէր ընդունել Հայաստանի բաժանման առաջարկութիւնը՝ հրաման տուաւ Սուրենայ երթալ գրաւել զՀայս, ի հարկին նաև բռնութեամբ։ Բայց ըստ Բուզանդայ կը թուի թէ բռնութեան հարկ չմնաց. Հայք ինքնակամ ընդունեցան զՍուրէն, մանաւանդ ինքեանք իսկ կանխեցին հրաւիրել զՊարսիկս։ Ահա պատմութիւն Բուզանդայ, որ միաբան է ընդ Ամմիանու։ Ըստ Բուզանդայ՝ Մանուէլ յետ մերժելոյ զՎարազդատ՝ խորհրդով տիկնոջն Զարմանդխտոյ կնոջ Պապայ, և հաւանութեամբ մեծամեծ նախարարաց կ՚առնու զիշխանութիւնն իբրև յանձանձիչ կամ խնամակալ, զերկսին որդիսն Պապայ զԱրշակ և զՎաղարշակ, որ տակաւին չէին հասակու (չափահաս) ի ձեռն առնուլ տէրութեան սանձը՝ պատուով շրջեցուցանելով իբրև օրինաւոր ժառանգս գահուն։ Տեսնելով սակայն երկիրը մնացած անօգնական,—քանզի Վաղէս դաշամբ հրաժարելով Հայաստանէ՝ քաշած էր լեգէոններն ի պատճառս պատերազմին Գոթաց—լաւ համարեցաւ զՏապուհ առնել իւր թիկունս. ուստի և իսկոյն ղրկուեցան հրաւիրակք առ Տապուհ յայտնել նմա զհպատակութիւն ազգին։ Ուրախ եղաւ Տապուհ, և ղրկուեցաւ Սուրէն իբրև բարեկամ և օգնական Մանուէլի տասն հազարաւ պարսիկ հեծելովք միայն, մեծամեծ ընծայիւք առ Մանուէլ և թագաւորական նշաններով առ տիկինն Հայոց և առ երկուսին ժառանգս գահուն։ Այս կը թուի եղած Վարազդատայ մերժման տարին (377).
—«Եւ սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ նուաճեաց զաշխարհըս, և զամենայն մեծամեծս և զնախարարսն Հայոց առ ինքն ժողովէր, և էր նա առաջնորդ և գլուխ նոցա. և վարէր զիւր իշխա-

նութիւնն, և հրաման տայր աշխարհի փոխանակ թագաւորի, և ունէր զաշխարհ ի շինութեան։ Եւ զկինն Պապայ արքայի զԶարմանդուխտ տիկին, հանդերձ որդւովքն Արշակունեօք, առեալ զնոսա՝ ի տեղի թագաւորի կալեալ ի պատիւ շրջեցուցանէր։ Մեծաւ իմաստութեամբ և բազում յաջողութեամբ աշխարհին Հայոց մեծապէս առաջնորդէր, որչափ եկաց ժամանակս։ Բայց անուանք պատանեկացն Արշակունեաց, անուն երիցուն Արշակ, և կրտսերոյն Վաղարշակ։ Զսոսա առեալ Մանուէլն սպարապետն իբրև զսան սնուցանէր, և զմայրն նոցա զԶարմանդուխտ ի մեծի շքի տիկնութեան պատուէր։ Բայց յորժամ տեսանէր Մանուէլն, եթէ զոր ինչ գործեացն ընդդէմ էր հրամանաց թագաւորին Յունաց՝ ածեալ զմտաւ իւրով, թէ արժան է նմա գէթ զմի ոք թիկունս առնել՝ խորհեցան խորհուրդ ընդ տիկնոջն, և կամեցաւ թիկունս առնել զարքայն Պարսից։ Ապա յետ այսորիկ առաքեցին Զարմանդուխտ տիկինն Հայոց և սպարապետն Մանուէլ զԳարջոյլ Մաղխազ հրովարտակօք ընծայիւք և պատարագօք առ թագաւորն Պարսից, զի ի նա ձեռս տայցեն և զնա պաշտեսցեն, և նմա միամտութեամբ ծառայեսցեն, և տայցեն նմա զաշխարհս Հայոց։ Եւ չոգան հասին Գարջոյլն և որք ընդ նմայն էին ի դուռն թագաւորին Պարսից. մատուցին նմա զհրովարտակսն զտիկնոջն և զսպարապետին Հայոց, և ետուն նմա զյղեալ պատգամսն հնազանդութեան։ Եւ յորժամ ետես զնոսա թագաւորն Պարսից՝ մեծաւ խնդութեամբ ընկալեալ զնոսա, մեծապէս մեծարանօք պատուեաց զնոսա, և մեծաւ պարգևօք առնէր զԳարջոյլն։ Եւ ընդ նմա առաքէր յերկիրն Հայոց զՍուրէն պարսիկ մի ճոխ ի նախարարացն իւրոց, և ընդ նմա յղեաց տասն հազար հեծեալս վառեալս սպառազէնս, զի երթիցէ Սուրէն յաշխարհն Հայոց ի թիկունս օգնականութեան զօրավարին Մանուէլի, և պահել ի թշնամեաց զտիկինն զԶարմանդուխտ։ Եւ ետ թագաւորն Պարսից տանել ի ձեռն Սուրենայ թագ և պատմուճան և զվառ թագաւորացն տիկնոջն Զարմանդխտոյ, և թագս մանկանցըն որդւոցն երկոցունց, Արշակայ և Վաղարշակայ։ Զսոյն և սպարապետին Մանուէլի սոյնպէս ետ տանել զթագաւորական պատմուճանն, սամոյր մի և զգլխոյ պատիւ զարգմանակ ոսկի արծաթ, և ի պատիւ գլխոյ ի վերայ գագաթանն ի թիկանց արծուոյն հանգոյցք թագի կապեալ աշխարհաւանդ հանգոյց, և լանջաց պատիւ ապիզակ, որպէս օրէնք են ունել թագաւորաց, և շեկակարմիր խորան, և ի վերայ խորանին արծուի նշան, և սրահակս մեծամեծս և կապուտակ երկնագոյն հովանոցս։ Եւ ոսկի սպաս տաճարին առաքէր սպարապետին Մանուէլի, և տայր նմա յիւրմէ ձեռանէ իշխանու-

թիւն մեծ ի վերայ աշխարհին Հայոց։ Եւ եկն եհաս Գարջոյլն Խորխոռունի յերկիրն Հայոց, և էած զՍուրէն պարսիկ տասն հազարաւն։ Եկին բերին զպարգևսն տիկնոջն և մանկանց նորա. սոյնպէս սպարապետին Մանուելի ունէին պարգևս, և աւագացն և տանուտերացն, իւրաքանչիւր մեծամեծացն Հայոց։ Եւ յորժամ տեսանէին զմեծարանսն և զսէր թագաւորին Պարսից տիկինն Զարմանդուխտ և սպարապետն Հայոց Մանուէլ՝ մեծաւ խնդութեամբ մեծարէին զՍուրէնն։ Տային զաշխարհն Հայոց ի ձեռն Սուրենայ, և հնազանդէին հրամանաց թագաւորին Պարսից և կարգէին թագաւորին Պարսից յաշխարհէն Հայոց հարկս՝ տալ ընծայս և պատարագս։ Սոյնպէս և մարզպանին Սուրենայ հասս և կօշիկս և զպիտոյս զռոճկացն, սոյնպէս և տասն հազարացն դարման և կերակուր ըստ պիտոյիցն։ Եւ սրտի մտօք արարին իւրեանց թիկունս, և տէր դնել իւրեանց զարքայն Պարսից՝ կային ի ծառայութեան նորա։ Եւ ստէպ ստէպ դեսպանք թագաւորին Պարսից երթային և գային յերկիրն Հայոց, մեծապէս զմտերմութիւն միամտութեանն որ էրն՝ ցուցանէին թագաւորին, և նա ստէպ առաքէր պարգևս տիկնոջն Զարմանդխտոյն, սոյնպէս և զօրավարին Հայոց Մանուելի։ Յոյժ մտերիմ և սիրելի լինէր Մանուէլ թագաւորին Պարսից, և մեծապէս փառաւորեալ աւագանայր ի նմանէն» (Բուզ. Ե. Լէ.)։

**22.** Ըստ Բուզանդայ՝ Մերուժան տեսնելով զՄանուէլ այնպէս փառաւորեալ՝ կը գրգռէ զնա քսութեամբ, որպէս թէ Շապուհ կամէր տալ սպանանել զնա ի ձեռն Սուրենայ։ Մանուէլ որ գիտէր Շապհոյ նենգաւորութիւնը՝ կը հաւատայ Մերուժանայ բանսարկութեան և զայրանալով կը հալածէ զՍուրէն իւր տասն հազարաւ, կեանքը միայն շնորհելով նմա։ Շապուհ երեքս զօրք կը ղրկէ Մանուելի վրայ, բայց Հայք կը յաղթեն։ Մերուժան վերջին անգամ կու գայ աւելի մեծ բանակաւ, բայց յաղթուելով կ'սպանուի։ Մանուէլ, Վարազդատայ մերժման թուականէն հաշուելով՝ իբր եօթը տարի կը վարէ զիշխանութիւնն, ի մեծ պատուի ունելով զտիկինն Զարմանդուխտ և երկու արքայազուն իշխաններն զԱրշակ և զՎաղարշակ, և յետ ամուսնացուցանելոյ զնոսա մեծ շքեղութեամբ՝ կը մեռնի, յորդորելով զորդի իւր զԱրտաշիր կալ մնալ հաւատարիմ իւր բնիկ տերանց Արշակունեաց, պատմելով իւր հաւատարիմ վաստակն առ ազգն, և պատուէր տալով չառնել կոծ ի վերայ իւր։ Այլ, բմբէ, Մանուելիւ կը մարի նաև Հայ ազգին կեանքը։ Բարեպաշտն Թէոդոս, ինչպէս յիշեցինք, ցանկալով իւր ընդարձակ երկիրներուն վրայ յաւելուլ պատառիկ մի ևս ի Հայոց՝ կը հաճի Հայաստանի բաժանման, և իբրև երկու տարի ետքը (386),

յետ մահուն Արշակայ, որ գոհ եղած էր թագաւորել այն փոքրիկ մասին վրայ, մինչ Խոսրով ոմն առաւ պարսկական մեծագոյն մասին թագաւորութիւնը՝ կը ջնջէ իւր բաժնէն հայ թագաւորութեան անունը, չտալով յաջորդ Արշակայ.—«Մերուժանն Արծրունի իբրև տեսանէր զայն ամենայն փառս աւագութեան, որովք շքեղացոյց զՄանուէլ արքայն Պարսից, զի որպէս զեղբայր կամ զորդի այնպէս պատուեաց զնա՝ յոյժ նախանձէր, և խնդրէր նա հնարս հնարել, հանել զնա յաչաց թագաւորին Պարսից։ Եւ իբրև այլ հնարս ինչ ոչ կարէր գտանել դուրս նենգութեանց առ Պարսիկս ընդ որ մտցէ՝ ապա խորհեցաւ նա ընդ միտս իւր զնենգութիւն չար, և կեղծաւորութեամբն իւրով զգործ իւր յառաջացոյց։ Զի իբրև նայեցաւ ի միամտութիւն զօրավարին Մանուելի՝ սկսաւ նախ հպատակութեամբ զմիտսն գողանալ. Նախ մտերմութեամբ հաճել զմիտս նորա, ապա զանձն իւր հոգածու և խնամակալ երևեցուցանէր նմա։ Ապա եկեալ գուշակութիւն առնէր նմա սուտ ի քմաց իւրոց, թէ Գիտասջիր դու, ո՛ Մանուէլ, զի դեսպան լեալ է յարքայէն Պարսից, յաղագս քո բերեալ ունին հրաման առ Սուրէնն, զի զքեզ կալցին կապեսցեն, կամ ասէն սպանցեն, կամ ոտիւք և ձեռօք և պարանոցաւ կապելով մեծաւ զգուշութեամբ տանել առ թագաւորն Պարսից։ Արդ դուն գիտա, տես խորհեաց ընդ միտս քո, թէ զի՞նչ գործեսցես։ Եւ եղև յորժամ լուաւ զայս Մանուէլ՝ կայր զարմացեալ հիացեալ ընդ միտս իւր և ասէր, թէ Զի՞ք իմ յանցուցեալ առ Պարսիկս. էր աղագաւ զայն առնիցեն մեզ։ Եւ ասէ Մերուժանն ցՄանուէլ. Ես ճշգրտեցի և հաստատեցի, զի իրքդ այդ ստոյգ են. ես մեծաւ սիրով և հոգաբարձութեամբ գուշակ եղէ քեզ։ Իբրև հաւատաց բանին Մերուժանայ Մանուէլն և կարծեաց ի միտս իւր, թէ ստոյգ են բանքն այն զոր լուաւ՝ ապա գունդ կազմեաց և զօր բազում առ ինքն կուտեաց զօրավարն Հայոց Մանուէլ։ Եւ մինչդեռ խաղաղութեամբ Սուրէնն իւրով բանակաւն բանակեալ էր յանհոգս յանկարծս և աննենգ խաղաղութեամբ, իբրև ոչինչ գոյր ի մէջ նոցա նենգութիւն դաւաճանութեան ըստ համբաւահան չարագործն Մերուժանայ՝ յանկարծումն յեղակարծումն զօրավարն Հայոց Մանուէլ հասանէր անկանէր ի վերայ բանակին Սուրենայ, և զտասն հազարսն զՊարսիկսն միանգամայն կոտորէր։ Բայց զմարզպան Սուրէնն միայն արձակէր, շնորհել զարևն իւր պարգև արարեալ։ Եւ զարմացեալ Սուրէն ընդ իրսն ընդ այնոսիկ, թէ ընդէ՞ր, է՞ր աղագաւ նա զայս արդեւք գործեաց, և ասէ Մանուէլ ցՍուրէն. Զքեզ վասն բարեկամութեան սիրոյն արձակեալ, ողջանդամ երթիջիր զճանապարհս քո, այլ ես ի Պարսկաց ի խաբս այլ

*ոչ անկայց։ Եւ ինքն Մանուէլ զգունդն կազմէր և զարսն պատրաստէր, և գիտաց այնուհետև, թէ մեծ թշնամութիւն յարոյց և մեծ գրգռութիւն ընդ թագաւորին Պարսից։ Եւ յայնմհետէ զօրավարն Հայոց Մանուէլ հանդերձ ամենայն գնդաւն զտիկինն Զարմանդուխտ զկին թագաւորին Պապայ ի գլուխ առեալ՝ ի տեղի թագաւորացն շրջեցուցանէին, և ինքեանք կային ի մարտի պատերազմին յաղագս շինութեան աշխարհին Հայոց յամենայն կողմանց ընդ թշնամիս և ընդ սահմանակիցս որ շուրջ զիւրեամբք էին, և աւելի ընդ զօրսն Պարսից զամենայն աւուրս կենաց իւրոց։ Բայց Մերուժանն գնայր անդր առ թագաւորն Պարսից ամբաստան զՄանուէլէ։ Ապա թագաւորն Պարսից արձակեաց ի վերայ Հայոց զԳումանդ Շապուհ՝ գալ առնուլ աւերել զերկիրն։ Եկին հասին նոքա մինչև ի սահմանսն Հայոց որ յԱտրպայական կուսէն էր։ Իբրև զայն լսէր զօրավարն Հայոց Մանուէլ՝ գումարէր զզօրսն իւր ըստ բռշոպ ժամանակին որչափ և եկն ի ձեռն իւր՝ քսան հազար, և ճեպեաց Մանուէլ և եհաս ընդդէմ գնդին, և արկանէր ի սուր զզօրսն Պարսից, և զԳումանդ Շապուհն սպանանէր, և դարձեալ ելանէր մեծաւ յաղթութեամբ։ Ապա յետ այսորիկ Վարազ ոմն զօրավար թագաւորին Պարսից գայր հասանէր յերկիրն Հայոց տալ պատերազմ ընդ Մանուէլի սպարապետին և ընդ ամենայն գնդին Հայոց։ Ապա կազմէր պատրաստէր սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ հեծեալս սպառազէնս տասն հազար, և եկեալ տայր պատերազմ ընդ Վարազայ։ Հարկանէր և սատակէր, ջնջէր զնոսա ի միջոյ, և գլխովին զՎարազն սպանանէր. Թափէր զկապուտ սաստիկ, զզարդ և զզէն զօրացն, և դառնայր մեծաւ խաղաղութեամբ։ Յետ այսր ամենայնի առաքեաց թագաւորն Պարսից զՄռիկանն ի վերայ երկրին Հայոց։ Եկն եհաս նա հանդերձ ամենայն բազմութեամբ զօրաց իւրոց յերկիրն Հայոց, և էառ զկողմն մի երկրին Հայոց, և բանակեալ էր յԱրտանդան դաշտին։ Անկանէր ի վերայ բանակին Մանուէլն ի գիշերի, և անդէն առհասարակ ընդ սուր հանէր զամենեսեան ի զակիշն, և զՄռիկանն սպանանէր, և ոչ զմի ոչ ապրեցուցանէր, և թափէր աւար բազում»* (Բուզ. Ե. ԼԸ—ԽԱ)։

*Այս պատերազմներէն ետքը եղաւ միւս ևս և մեծ յարձակումն Պարսից, առաջնորդութեամբ Մերուժանայ։ Բուզանդ այս մեծ պատերազմին պատմութենէն առաջ կը յիշէ եօթնամեայ խաղաղութեան ժամանակ, իբրև ժամանակ յանձանձչութեանն Մանուէլի, և արդարև Վարազդատայ մերժման թուականէն* (377) *հաշուելով մինչև* 383, *որ է հաւանականագոյն թուական մահուանն Մանուէլի՝ կը գտնենք եօթը տարի։ Ահա Բուզանդայ ԽԲ.*

գլուխը, որ ունի Մանուէլի յանձանձուութեան ժամանակին համառօտ պատմութիւնը մինչև ի բաժանումն թագաւորութեանն. «Եւ յետ այսորիկ (այսինքն յետ վանելոյ Մանուէլի զՍուրէն և Պարսից զերրեակ յարձակումն, ինչպէս նաև Մերուժանայ պատերազմը զոր պիտի պատմենք) ամս եւթն, և այլ ոչ ևս յաւելին զօրքն Պարսից ժտել ինչ մտանել ի սահմանս Հայոց, և եղև խաղաղութիւն երկրին։ Եւ ժողովեցան առ զօրավարն Մանուէլ ամենայն ցրուեալք երկրին, եկին անկան այր յայր, և էին բնակեալ յանհոգս, և զօրավարն Մանուէլ առաջնորդէր նոցա։ Եկին ապա և մնացորդք ի տանէն Սիւնեաց, պատանեակք երեք մնացեալք ի կոտորածէն Պարսից, առ զօրավարն Հայոց Մանուէլ, և անուանք նոցա՝ միումն Բաբիկ, միւսումն Սամ և միւսումն Վաղինակ։ Եւ ընկալաւ զնոսա զօրավարն Հայոց Մանուէլ, և եղև նոցա օգնական, և դարձ արար նոցա յերկիրն իւրեանց. և կացոյց տէր զԲաբիկ ի վերայ երկրին և զերկուսն ևս ըստ իւրաքանչիւր չափու, և էր Բաբիկ նիզակակից զամենայն աւուրս կենաց նորա։ Նոյնպէս յամենայն գաւառս կացուցանէր սպարապետն Հայոց Մանուէլ նահապետս և տեարս գաւառաց գաւառաց, և առաջնորդէր ամենեցուն խաղաղութեամբ։ Եւ ամենայն երկիրն Հայոց էր ի խաղաղութեան ընդ հովանեաւն Մանուէլի զամենայն աւուրս կենաց նորա. ամենայն մարդիկ երկրին Հայոց վայելէին յաւուրս իւրեանց, ուտէին և ըմպէին և ուրախ լինէին զայն ամս եւթն տէրութեանն Մանուէլի, մինչև ի բաժանումն երկրին Հայոց և ի քակտումն թագաւորութեանն» (Բուզ. Ե. ԽԲ)։

Այս միջանկեալ գլուխը դնելով կու գայ Բուզանդ պատմել Պարսից վերջին և մեծ յարձակումն ի վերայ Մանուէլի առաջնորդութեամբ Մերուժանայ, որ և կ'սպանուի այս պատերազմին մէջ.— «Ապա Մերուժանն Արծրունի վաղուց ևս յաւուրսն Արշակայ արքայի լեալ էր ապստամբ ի թագաւորէն Հայոց, ինքնակամ ձեռս տուեալ յարքայն Պարսից, և զօրէնս մազդեզանցն յանձն առեալ էր և ուրացեալ զհաւատսն քրիստոնէութեան, և բազում անգամ լեալ էր առաջնորդ զօրացն Պարսից, և մեծամեծ չարիս անցուցեալ էր ընդ երկիրն Հայոց և տակաւին էր նա առ թագաւորին Պարսից։ Ապա գրգռեաց Մերուժանս այս զթագաւորն Պարսից, և առեալ զօրս բազումս ի նմանէ՝ եկն եհաս յերկիրս Հայոց։ Եւ էր սորա մեծաւ պարծանօք պարծեցեալ առ թագաւորին Պարսից, զի կամ կալեալ կապեալ տարցի զՄանուէլն առ թագաւորն Պարսից, և կամ զգլուխն հատեալ զառաջեաւ բերցէ թագաւորին Պարսից։ Գայր հասանէր ամենայն բազմութեամբ զօրացն Պարսից ի գաւառն

Կորճէից, և ինքն իւրով սեպհական գնդաւն, հրոսիւն ժողովելով մեկնէր զատանէր յԱրեաց գնդէն։ Կամէր յանպատրաստից գալ անկանել ի վերայ Մանուէլի, միայն անձամբ անուն առնուլ, և ինքեամբ միայն կատարել ջանայր, ի պարծանս իւր անձամբ վճարեալ զգործ պատերազմին։ Վասն այսորիկ այսպիսի բանս խօսէր ընդ զօրավարսն Արեաց գնդին և ասէր, եթէ Ես նախ երթայց լրտեսեցից, և զձեզ տարայց ի վերայ, զի այսպէս դիւրաւ լիցի ի բուռն արկանել զնա։ Եւ ինքն զիւր գունդն առեալ՝ խաղայր գայր հասանէր յերկիրն Կոգ գաւառին և ինքն զտեղի առեալ՝ առնէր տես ի բանակն Մանուէլի։ Եւ գային հասանէին լրտեսքն և գիտէին զՄանուէլ, զի էր բանակ նոցա ի Բագրևանդ գաւառին ի Բագուան աւանի, որ է մօտ յաւերակսն Զարեհաւան քաղաքի։ Եկին գիտեցին դէտքն զբանակն Մանուէլի, և զերամակ ձիոց բանակին յորում վայրի կային, և չոգան տանել զրոյց նմա։ Եւ խորհեցաւ նա առնուլ զերամակ բանակին. այնմ ուշ առնէր, և խնդալից եղեալ ասէր պարծելով առաջի իւրոց զօրացն, Թէ Վաղիւ յայս ժամ իմ կալեալ կապեալ ընկեցեալ զՄանուէլն, և յանդիման նմին զկին նորա Վարդանոյշ խայտառակեալ իցէ։ Եւ չու արարեալ կատարել զգործն՝ յոր փութացեալ կամէր հասանել։ Եւ էին ի վայրսն, ընդ որ գալ էր գնդին ընդ ճանապարհն՝ լերինք ինչ, որում ի բնակչացն Եղջերք կոչեն։ Եւ մինչդեռ գայր Մերուժանն ի ճանապարհի գնդաւն իւրով՝ դիպեցան նմա ուղևորք, յորս հարցանէր Մերուժանն և ասէր. Ճանապարհս ի Բագրևանդ ընդ որ երթայ։ Եւ ուղևորացն տուեալ պատասխանի՝ ասացին. Ճանապարհ ընդ Եղջերս է։ Եւ մեծապէս խորհեաց Մերուժանն ընդ միտս իւր, տրտմեցաւ ընդ բանսն, սակայն տայր հրաման չարաչար քարշել զուղևորսն և ծեծել։ Եւ ինքն անցեալ ըստ ուղին իջանէր ի հմայս քաղդէութեան, զքուէս հարցանէր. և ոչ գոյր նմա յաջողակ յուռութ կախարդանացն յոր յուսայրն։ Ապա սրտմտութեամբ մեծաւ զիւր դէտսն առաջի արկեալ՝ յերամակական արշաւէր, զի հնար լիցի նմա նախ ըմբռնել։ Եւ հասեալ ի տեղին՝ զերամակ ձիոցն ոչ գտանէր, վասն զի յԱստուծոյ այնպէս իմն եղև խրատունք պատրաստութեան Հայոց գնդին, զի սպարապետին Մանուէլի ամենայն Հայոց գնդին տուեալ էր ժամ յորս երթալոյ. վասն այսորիկ դիպեցաւ զի զամենայն երամակն ի չէն էր ածեալ. և նոքա դեռ որսոյ պատրաստեալ էին ի հեծանել։ Եւ անտի գուժաւոր հասանէր առ զօրավարն Հայոց Մանուէլ, թէ Գիտա, տես, զի Մերուժանն Արծրունի հասեալ է բազում գնդաւ ի վերայ քո։ Ապա կազմեցան ըստ նմին, պատրաստեցան ամենայն զօրքն Հայոց գնդին, և Մանուէլ սպարապետն. և մտին առաջի սուրբ ոսկերացն

Յովհաննու որ կայր յայնմ գեւղ, ուխտաւոր լինէին և խնդրէին յԱստուծոյ, զարդար դատաւորն յօգնականութիւն կոչէին լինել նոցա այցելու օգնական։ Եւ անտի ի դուրս ելեալք՝ զտիկինն Արշակունի հանդերձ մանկամբք Արշակաւ և Վաղարշակաւ զնոսա և զիւրեանց կանանին ընդ նոսա արձակեալ՝ յամուրն յուղարկէին ի լեառնն մեծ որ անուանեալ կոչի Վարազ։ Եւ զմանուկն Արտաւազդ որդի Վաչէի ընդ կանանին տայր հրաման երթալ Մանուէլ. իսկ նա ոչ հաւանէր, չառնոյր յանձն։ Եւ էր նա ի տիոց տղայ, և ըստ մանկութեանն օրինի, ըստ կրօնից (սովորութիւն) Հայոց, որպէս օրէն էր զգլուխ մանկտւոյն գերծուլ՝ սոյնպէս ի ժամանակին գերծեալ էր զգլուխ մանկանն Արտաւազդայ, և ցցունս էր թողեալ և գէս արձակեալ։ Ապա իբրև ոչ հաւանեցաւ նա ընդ կանանին երթալ՝ մտրակ ի վեր առեալ Մանուէլի տանջէր զմերկ գլուխ Արտաւազդայ, սաստէր նմա չերթալ ի պատերազմ վասն մանկութեան ժամանակին տիոց։ Իսկ նա առ նորա ականէ գնաց ընդ նոսա. բայց ապա յետոյ վառեալ կազմեալ պատրաստէր երթալ զկնի պատերազմին։ Այլ յորժամ զտիկինն ամենայն աղխիւն յուղարկեցին յամուրն՝ ինքեանք վառեալք կորգեալք կազմեալք ի պատերազմն, ի մի վայր գումարեալք, նշանս արձակեալք, դրօշս փողփողեալս, ընդ Գեւղն աւան ի դուրս ելանէին ընդ կողմն արևմտից. և անդէն ընդ առաջ ելանէր նոցա Մերուժան իւրով գնդաւն որ եկեալ էր ի վերայ նոցա։ Եւ չարագործն մեղաւորն Մերուժան զիւր զզէնն և զարդ և զնշանն սաղաւարտին բազմաց եդեալ էր զնոյն օրինակ, և զբազումս յիւր կերպարանեալ էր ի մէջ իւրոյ գնդին, և զինքն զիւր նշան ոչ ունէր։ Սակայն Մանուէլ իբրև տեսանէր զնոցա գունդն՝ հանդերձ իւրով գնդաւն առիւծաբար վարազօրէն յարձակեալ ի նոցա գունդն խառնեցաւ. ուշ եդեալ այնոցիկ որ զՄերուժանայ նշանսն ունէին՝ համարէր եթէ զՄերուժանն սպանանիցէ։ Եւ զբազում ախոյենից հատանէին զգլուխս, որք զնոյն զնորին Մերուժանայ ունէին զնշանս, և տեսանէին զի չէր նա։ Ապա խօսել սկսանէր սպարապետն Մանուէլ ընդ իւրում նիզակակցին Բաբկան և ասէր. Տեսանե՞ս քանի խաբեաց զմեզ կախարդն Մերուժան. այլ իմ և նորա յառաջու շատ լեալ ի միոջ վայրի ի հաշտութեան ժամանակի՝ նշան մի գիտեմ ես զնորա, զի յորժամ ի ձի հեծեալ էր՝ երան բարձի նորա ոչ յանձին և ի ծունկն ոչ հաւանէր, այլ ի բացեայ կայ ի ձիոյ անտի։ Արդ եկ, զոյգ հասարակ այսմ նշանի ուշ դիցուք, թերևս ճանաչել կարասցուք զդիւթ քուէթցն զկախարդն։ Ապա զոյգ միտ եդեալ երկոցունցն, և տեսեալ զՄերուժանն՝ այնու նշանաւ ծանեան. տեսին զի յայլակերպս լեալ

էր, զիւր նշանսն ոչ ունէր։ Ապա ձայն տուեալ յառաջ կոչեաց զՄերուժանն Մանուէլ և ասէ ցնա. Ա՜յ կախարդ, ցե՞րբ խաբես զմեզ, և վասն քո և զայլս ևս տաս ջարդել. այլ մեք ծանեաք զքեզ զի ուադիկ կաս, և ապրել քեզ չիք հնար այսօր ի ձեռաց մերոց, զի այսօր էած կատարեաց զչարիս քո տէր Աստուած ի գլուխ քո և մատնեաց զքեզ Տէր ի ձեռս մեր։ Իսկ յորժամ զայն լսէր Մերուժանն՝ անդէն վաղվաղակի նիզակ առեալ, յառաջ խաղացեալ ախոյեան ելանէր Մանուելի։ Սակայն յորժամ հարկանէին երկոքեան զմիմեանս նիզակօքն, քանզի երկոքեան տքքն յաղթք էին՝ ի ձիոյն յերկիր անկանէին, և անդէն նիզակակիցն Մանուելի Բաբիկ տէր գաւառին Սիւնեաց հասանէր, նիզակաւ ի վերուստ ի վայր ի կողին կարէր (զՄերուժան) ընդ գետինն, և ոչ կարէր յառնել։ Իսկ զսպարապետն Մանուէլ իւր վարուանդասպասքն յերիվարն հանէին, և զՄերուժանայ զգլուխն ի բաց հատանէին. և ամենայն զօրացն լինէր փախուստ, իբրև տեսին թէ Մերուժանն մեռաւ։ Եւ աստի գունդն Մանուէլեան խրախոյս առեալ յարձակեցան զհետ Մերուժանեան գնդին. հարկանէին սատակէին զնոսա, և զմի ի նոցանէն ոչ ապրեցուցանէին։ Այլ մանուկն Արտաւազդ ի Մանուելէ գաղտ եկեալ էր ի ճակատն. վառեցաւ կազմեցաւ և եմուտ զանխուլ ի Մանուէլեան գնդէն առ ափն Եփրատ գետոյ, եհար սատակեաց ի Մերուժանեան գնդէ անտի անթիւ բազում սպառազէնս։ Եւ նշանակիր մի ի Մերուժանայ իբրև ետես զԱրտաւազդն՝ յընչացք եբաց, զի տեսանէր զնա պատանեակ մի կայտառ անմօրուս, երեսօք գեղեցիկ, ապա զնշանն զնիզակաւն պատեալ յարձակեցաւ ի վերայ նորա։ Իսկ նա ընդ գիրկս մտեալ հարկանէր զայրն նետիւ, և կարանէ ի կարան թափ հանեալ զնետն ի ցամաք ընկենոյր զնա։ Եւ առեալ զնիզակն, զհետ մտեալ փախստէիցն, ընդ սուր հանեալ զզօրսն Մերուժանայ՝ աւելի քան զամենեսեան Արտաւազդ որդի Վաչէի մանուկն կոտորէր. և ինքն մեծաւ անուամբ և բազում աւարաւ դառնայր. և զօրքն բերէին զկապուտն զոր թափէին ի զօրաց թշնամեացն։ Բայց յաւուր յայնմիկ լինէր մեծ վնաս անհնարին. զի զՎաչէ, զերկրորդն Մանուելի, ձին զուլամբ երթեալ սպանանէր. սոյնպէս և զԳարջոյլ Մաղխազ ձին տարեալ սատակեաց, վասն զի ի տոմուղ թերավարժ ձի հեծեալ էին երկոքին։ Իբրև դառնայր Մանուէլ երթալ ի բանակն տիկնոջ՝ տանէին ընդ ինքեանս զգլուխն Մերուժանայ, և Սամուէլ որդին Վահանայ ոչ դիպեցաւ ընդ Մանուելի, զի դարձաւ նա ի բանակն։ Սակայն յորժամ տեսին զգլուխն Մերուժանայ կանայք

բանակին Մանուէլի՝ մեծաւ աղաղակաւ ճիչ բառնային, զի նոքա այսպէս համարեցան թէ այն գլուխ Սամուէլի որդւոյ Վահանայ իցէ, վասն զի նման միմեանց էին երկոքեան, Մերուժանն և Սամուէլ։ Ապա տեսին զգլուխն Մերուժանայ, զի ի ցիցն երկայն կախեալ էր, յայնժամ ծանեան եթէ չէ Սամուէլայ, այլ Մերուժանայ Արծրունւոյ։ Ապա եկին բերին զմարմին Վաչէի ի բանակ անդր, հօրն Արտաւազդայ, և զմարմինն Գարջուլայ Մաղխազու Խոռխոռունւոյ, եդին աշխար մեծապէս և լացին զնոսա։ Եկին բերին զայրն նշանակիրն Մերուժանայ, զոր եհարն Արտաւազդ նետիւն, և ամենայն ոք զարմանայր ընդ այն, զի նետն թափ կարանէ ի կարան անցեալ էր. իբրև տեսին զնա՝ (Արտաւազդ) ապրեցաւ ի մահուանէ։ Այլ իբրև լուան զօրքն Պարսից, զոր թողեալ էր Մերուժանայ ի գաւառն Կորճէից, թէ սատակեցաւ Մերուժանն և կորեաւ գունդն որ ընդ նմա՝ և ինքեանք ի Պարսից երկիրն փախստական գնացին. և Հայոց երկրին լինէր խաղաղութիւն բազում» (Բուզ. Ե. ԽԳ.)։

Չիք տարակոյս, թէ ինչպէս Բուզանդայ պատմութեան ուրիշ մասերուն, մանաւանդ պատերազմի նկարագիրներուն մէջ՝ նոյնպէս ի սմին կան անվնաս աւելաբանութիւններ, սակայն չէ անհաւանական, թէ Շապուհ փորձեց քանիցս անգամ նուաճել զՀայս զինուք յետ մերժուելուն Սուրենայ, մինչև մահուամբ Մերուժանայ բանսարկուի վերցաւ գրգռութիւնն, և յարձակմունք դադարեցան։ Այս վերջին պատերազմին պատմութեան մէջ յիշուած մանր պարագաներէն, ինչպէս Գարեգնի Ռշտունւոյ սպանման, Մանուէլի և Մերուժանայ մենամարտութեան, Արտաւազդայ մանկան քաջութեան,—որոյ վասն և ազատեցաւ ի մահուանէ, որում կը թուի թէ արժանի էր ըստ զինուորական օրինաց՝ հակառակ հրամանաց սպարապետին մտնելուն համար ի ճակատ—կանանց կոծելուն զՍամուէլ Մամիկոնեան, զգլուխն Մերուժանայ վասն նմանութեանն կարծելով գլուխ Սամուէլի, այլովքն հանդերձ, պարագաներ զորս այնպէս մանրապատում կ'ընէ Բուզանդ՝—կը թուի թէ ականատես էր պատմիչն այս պատերազմին դիպաց։ Արդարև զարմանալի է. ինչ բաներ որ կը թուին չնչին՝ կը յիշէ Բուզանդ, ինչպէս Մերուժանայ սրունից հեռի մնալն երիվարէն ի ձիավարութեան, պատանեկաց գլուխը գերծուլ և ցցունս թողուլն նախնի Հայոց ըստ հին արևելեան սովորութեան, և այլ սոցին նմանք՝ են արդարև նշան անմեղ հաւատարմութեան մեր միամիտ պատմչին։

**23.** Բուզանդայ Ե. դպրութեան վերջին (ԽԳ) գլուխն ունի

զպատմութիւն Մանուելի թագաւորեցունելուն զորդիս Պապայ զԱրշակ և զՎաղարշակ, հիւանդանալոյն և մահուան։ Մանուէլ յետ ամուսնացուցանելոյ զերկուսին Արշակունի (արքայազուն) իշխանս, տալով առաջնոյն (Արշակայ), որ էր երէցն, զդուստր իւր Վարդանդուխտ, և երկրորդին՝ զդուստր ասպետին Բագրատունւոյ, և առնելոյ նոցա փառաւոր հարսանիս ի Կարին՝ կը թագաւորեցունէ զնոսա, զՎաղարշակ կրտսերն առնելով երկրորդ նմա, և ինքն հիւանդանալով կը մեռնի, ինչպէս արդէն յիշեցինք՝ ազնիւ խրատներ տալով իւր որդւոյն Արտաշրի, և իւր թաղման համար տալով մասնաւոր պատուէրներ, և հանելով յընչից իւրոց ամբաւ ողորմութիւնս աղքատաց, և բազում գանձս (գումար) եկեղեցեաց՝ կը մեռնի ի մեծ սուգ համօրէն հայ ազգին.—«Ապա յետ այսր ամենայնի զօր արարեալ զօրավարն սպարապետն Մանուէլ, հանդերձ Արշակունի տիկնաւն և մանկամբքն երկոքումբք Արշակաւն և Վաղարշակաւ, հանդերձ ամենայն բանակաւն Հայոց, մեծամեծ աւագայնովն նախարարօքն երևեալ հասանէր ի գաւառն Կարնոյ, և ամենայն տանուտեարք ընդ նմա։ Եւ տայր սպարապետն Մանուէլ զդուստր իւր Վարդանդուխտ կին Արշակայ մանկանն Արշակունւոյ, և փեսայ իւր առնէր զնա։ Առնէր հարսանիս և եղբօր նորին Վաղարշակայ, և տայր նմա զդուստր ասպետին Բագրատունւոյ ի Սպեր գաւառէ, որ թագադիրքն թագակապքն լեալ էին ի բնմէ ազգին թագաւորութեանն Արշակունւոյ, և մեծապէս արարեալ զհարսանիսն ամենայն երկիրն Հայոց՝ ցնծացեալք խնդացեալք էին ընդ այն մեծ խնդութիւն ուրախութեան։ Ապա յետ այսորիկ դարձեալ ի մի վայր ժողովեալ զաշխարհ ամենայն զմարդիկ երկրին Հայոց՝ թագաւորեցոյց զմանուկն Արշակ երկրին Հայոց, և զՎաղարշակ երկրորդ նմին։ Եւ ընդ այն ևս ցնծացեալ առնէին մեծապէս ուրախութիւն և ցնծութիւն ամենայն երկիրն Հայոց։ Ապա յետ այսորիկ հիւանդացաւ սպարապետն զօրավարն Հայոց Մանուէլ զախտ հիւանդութեան մահու, և կոչեաց զորդի իւր զԱրտաշէր և ետ նմա զտէրութիւն իւր և զսպարապետութիւն զօրավարութեանն իւրոյ։ Եւ պատուիրէր նմա հնազանդ հպատակ կալ արքային Արշակայ և լինել միամիտ, ջանալ վաստակել և տալ պատերազմ փոխանակ աշխարհին Հայոց, որպէս քաջ նախնիքն ի վերայ աշխարհին մտադիւր մեռանել։ Զի, ասէ, առ Աստուած այն արդարութիւն մեծ է և ընդունելի, և ոչ Աստուած թողու ի ձեռաց յորժամ այնպէս լինիք։ Անուն քաջութեան յերկրի թողուք և զարդարութիւն յերկինս ընծայեցուցանէք. և ամենևին ի մահուանէ մի

երկնչիք, այլ յուսասջիք յայն որ զամենայն արար և հաստատեաց· և զնեղութիւն և զպղծութիւն և զչարութիւն յանձանց ձերոց ի բաց արարէք, և զտէր Աստուած սրբութեամբ և միամտութեամբ պաշտեցէք, և ի վերայ աստուածապաշտ աշխարհի համարձակութեամբ մեռարուք, զի այն ինքն մահ վասն Աստուծոյ է, փոխանակ եկեղեցեաց նորա և ուխտի նորա, և ի վերայ բնակ տերանց աշխարհիս Արշակունւոյ։ Եւ յետ այսորիկ գրեաց հրովարտակ առ թագաւորն Յունաց, և նմա յանձն արար զաշխարհս Հայոց և զԱրշակ արքայ։ Եւ յետ այսորիկ իբրև միահամուռ ժողովեալ կային շուրջ զնովաւ, և իբրև կայր հիւանդ ի մահիճս իւր, անդ թագաւորն Արշակ և անդ Վարդանդուխտ կին թագաւորին, և անդ ամենայն աւագք և մեծամեծք և նախարարք Հայոց այր և կին առհասարակ ամենայն երևելի մարդիկ՝ ապա եբաց Մանուէլ զամենայն անդամս իւր առհասարակ առաջի ամենեցուն, մերկացաւ և եցոյց զի քան զդրամ խայծ ոչ գտանէր ողջ ի մարմնի նորա զոր խոցեալ էր ի պատերազմի։... Սկսաւ լալ և ասել, թէ Ես ի մանկութենէ համակ սնայ ի պատերազմունս, և մեծաւ քաջութեամբ զամենայն վէրս յանձն իմ առի· և ընդէ՞ր ոչ եհաս ինձ մեռանել ի պատերազմի, քան զօրէն անասնոյ մեռելոյ եղէ։ Զի լաւ էր ինձ եթէ ի պատերազմի մեռեալ էի ի վերայ աշխարհի, զի մի զեկեղեցիս և մի զուխտ Աստուծոյ առ ոտն կոխիցեն։ Սակայն և ի վերայ Արշակունեաց բնիկ տերանց աշխարհիս, և ի վերայ կանանց և ի վերայ որդւոց մերոց և ի վերայ աստուածապաշտ մարդկանս և ի վերայ եղբայրութեան ընկերութեան և մտերիմ բարեկամութեանն զի՞ էր եթէ հասեալ էր ինձ մեռանել· Թէպէտ շատ զանձնս յանդուգն վարեցի՝ զվատթար մահս մահճացս եհաս ինձ մեռանել։ Զայս և բազում և աւելի քան զսոյնս խօսեցաւ առաջի Արշակայ արքայի և առաջի ամենեցուն և աղաչեաց ևս զթագաւորն Արշակ և ասէ· Իմ Աստուծով կեցեալ և ջերմ քրիստոնէութեամբ· մի յանկարծ իբրև հեթանոս կոծ կամ աշխարանս ոք անյուսութեամբ գնիցէ ինձ։ Զի որ միանգամ յուսոյ յարութեան ակն ունին միւսանգամ կենդանութեան և գալստեանն Քրիստոսի՝ չէ պարտ լալ զնոսա։ Այլ իմ ցայժմ յուսով երկիւղիւ կեցեալ, բայց դուք մի թիւրիցիք ի պատուիրանացն Աստուծոյ· աւելի զարդարութենէ փոյթ արասջիք, ևս առաւել զողորմութենէ։ Զի մեզ մեծ Հայրապետն Ներսէս զայս համակ պատուիրէր, և ինքն յամենայն ժամ ի կենդանութեանն զսոյն գործէր, և այլոց ուսուցանէր առնել· զի ողորմէր աղքատաց, տնանկաց, գերեաց, ամայեաց· օտարաց, պանդխտաց· զի այսպէս ասէր նա· Քան զողորմութիւն առնել, կամ քան զտուրս տալ՝ այլ

ինչ մեծ և պատուական առաջի Աստուծոյ չիք։ Եւ զաշխար կամ զկոծ դնել մեռելոց դառն մեզս համարէր, և յամս իւր եհատ զայս յերկրէս Հայոց, զի յաւուրս նորա ոչ ոք իշխէր դնել կոծ կամ աշխարանս. այլ յետ մահու նորա անմիտ մարդիկ համարձակեցան զայս գործել։ Այլ վասն իմ ոք կոծ մի դիցէ. եթէ դնէ ոք՝ նա լիցի դատապարտ. այլ ոչ եթէ յետ մահուն իմոյ իմ իշխանութիւն ինչ է սաստել՝ զի զոր ոչն կամիմ մի արասցեն, այլ ինձ յիշատակ արասցէ որ զիս սիրէ։ Ի պատերազմի ի մահուանէ մի երկնչիք, ուր ես ոչ մեռայ, զի առանց Աստուծոյ ինչ ոչ լինի։ Զայս և զայսպիսի և որ ինչ այս բանից նման են բանք՝ խօսեցաւ։ Բազում և անչափ գանձս աղքատաց և կարօտելոց բաշխէր, իւրովք ձեռօք մատակարարէր և բազում մասունս յընչից իւրոց տայր յեկեղեցիս և ի վկայանոցս, և բազում գանձս տայր ցքահանայապետսն, և տպա ինքն մեռանէր։ Այլ իբրև մեռաւ մեծ սպարապետն Մանուէլ, հրամանն զոր տայր յաղագս կոծոյն չդնելոյ՝ այնմ ինչ ոք ոչ անսաց. այլ ամենայն մարդ երկրին Հայոց կոծ եդեալ մեծաւ աշխարանօք լային զնա առհասարակ ազատք և շինականք։ Զի ամենայն մարդ իբրև զհօրէ ի կարի առնէին զնմանէ վասն քաղցրութեան մարդասիրութեան, հեզութեան հանդարտութեան, խնամոտ բարերարութեան բարենշան աշխարհաշէն անձին Մանուէլի։ Ամենեքեան բերանաբաց հառաչէին զկնի նորա, կղկղաթ կաթոգի լինէին զիւրեանց քաջ զօրավորէն, զփրկչէն իւրեանց, զյաղթական զանուանի զարգասուէն, յայնպիսոյն հեռացեալ դնացեալ յանջատել և ի մեկնելոյն» (Բուզ. Ե. ԽԴ)։

**24**. Բուզանդայ Զ. դպրութեան Ա. գլուխն, որ և է բոլոր պատմութեան նորա գրեթէ վերջինն՝ կը պատմէ Արշակունեաց թագաւորութեան բաժանումն յերկուս։ Ըստ յիշեալ գլխոյն Բուզանդայ՝ յետ մահուն Մանուելի թագաւորութիւնն Արշակայ չմնաց հաստատուն։ Նախարարք չհաճեցան ընդ Արշակ, ուստի և դիմելով առ Շապուհ Գ. (384—389)՝ կը խնդրեն այլ թագաւոր, և կը տրուի նոցա Արշակունի տոհմէ Խոսրով ումն, որում Շապուհ կու տայ զքոյր իւր Զրուանդուխտ բաւական զօրօք, և Զիկ ումն նուիրակապետ՝ դաստիարակ նմա։ Այս գործ Նախարարաց էր ապըստամբութիւն Հռոմայեցւոց դէմ, ուստի և բնական էր Արշակայ, որ տրուած էր ի Թէոդոսէ կամ էր ընդ պաշտպանութեամբ նորա՝ խոյս տալ յարևմտեան սահման Հայոց։ Թէոդոս, յորոյ ի պաշտպանութիւն դիմած էր Արշակ, կամ որպէս այլուր ասէ Բուզանդ, որում յանձնուած էր նա գրով ի Մանուելէ (Բուզ.

Ե. ԽԴ.)՝ կը պատրաստուի կռուել։ Կը գումարուին երկուստեք բանակներ, Հռոմայեցւոցն՝ յԵկեղեաց ի Թիկունս Արշակայ, և Պարսիցն՝ յԱյրարատ յօգնութիւն Խոսրովու. բանագնացութիւնք կ՚սկըսին, Թէոդոս կը զիջանի, և Հայաստան որ սկզբամբ բաժնուած էր ի մէջ երկու տէրութեանց առ Վաղեսիւ և Շապհով Բ՝ կը բաժնուի արդեամբ.—«Ապա յետ մահուն Մանուելի զօրավարին Հայոց բազումք ի Հայոց նախարարացն անտի ելին գնացին զատեան առ Թագաւորն Պարսից, և մատնեցին նմա զաշխարհն Հայոց, և խնդրեցին ի նմանէ թագաւոր Արշակունի։ Եւ նորա յանձին կալեալ մեծաւ խնդութեամբ ընդ իւր ձեռն տալ իւրով բանիւ ի նմին տոհմէ ի թագաւորութենէն Հայոց Արշակունի, և նովաւ յինքն գրաւել զաշխարհն Հայոց։ Ապա գտանէր ի նմին տոհմէ մանուկ մի անուն Խոսրով, և կապեաց թագ ի գլուխ նորա, և ետ նմա կին զքոյր իւր զԶրուանդուխտ, և արար ընդ նմա զամենայն զզօրս զօրութեան իւրոյ, և Զիկ նուիրակ դաստիարակ ետ արքային Խոսրովայ, և եկին հասին յաշխարհն Հայոց։ Իբրև ետես Արշակ արքայ զնոսա՝ մերժեցաւ տեղի ետ, չոգաւ գնաց ի սահմանս Յունաց, և էին Թիկունք Արշակայ թագաւորին Հայոց, և Խոսրովու՝ թագաւորն Պարսից։ Ապա եկին զօրքն Յունաց թագաւորին ի թիկունս, և թագաւորն Արշակ (էր) զԵկեղեաց գաւառաւ, և զօրքն Պարսից և արքայն Խոսրով՝ յԱյրարատ գաւառին։ Ապա դեսպանք և հրեշտակք երկուց թագաւորացն, Յունացն և Պարսից, միմեանց առ միմեանս երթևեկէին։ Եւ այնուհետև առնեն խորհուրդ միաբանութեան հաւանութեան ընդ միմեանս թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից, և լաւ համարեցան զաշխարհն Հայոց ընդ երկուս ի մէջ իւրեանց բաժանել» (Բուզ. Զ. Ա.)։ Եթէ սպառ է հաւատալ Բուզանդայ՝ Թէոդոս և Շապուհ արարին զայս բաժանումն՝ որպէս զի տկարացուսցեն և ապա դիւրաւ տիրեն իւրաքանչիւր միոյ մասին.—«Զի ասէին, թէ ի միջի մերում բնակեալ է այս հզօր և հարուստ թագաւորութիւն, լաւ է զի այսու եղծանել և խանգարել կարասցուք զայս թագաւորութիւնս. նախ ընդ երկու բաժանել երկու թագաւորօքս Արշակունօք զորս կացուցաք, ապա և ընդ նոսա կրճել ջանասցուք, աղքատացուցանել, ի մէջ արկանել ի ծառայութիւն, զի մի կարասցեն ի մէջ մեր ամբառնալ զգլուխս» (Անդ)։ Մեզ չթուիր հաւանական Հայաստանի բաժանման դնել պատճառ երկուց մեծ դրացի տէրութեանց ժլատութիւնը միայն։ Երկու ոսոխ տէրութեանց, որ իրարմէ կորզել կը ջանային միշտ Ասիոյ յառաջակողմը, Հռոմայեցիք գոնէ մինչև Տիգրիս, Պարսիկք մինչև Եփրատ՝ հարկաւոր էր Հայաստան իւր աշխարհա-

գրական դրին իբրև պատուար և դուռն Միջագետաց, և որ այս պատճառաւ էր նիւթ մշտնջենաւոր կռուոյ, որում վերջ տալու համար հարկ եղաւ բաժնել զՀայս երկու, ի սկզբան իբրև ազատ թագաւորութիւններ, և յետ որոյ այս բաժանմամբ կորոյս Հայաստան զինուորական կարևորութիւնը՝ բնական էր այն թագաւորութեանց ևս ջնջուիլ, որպէս և եղաւ իսկ։ Բայց և Հայաստան ոչ սակաւ նըպաստ եղաւ իւրովսանն այս վախճանին։ Հայք ի բնէ տկար, համեմատութեամբ այն երկու դրացեաց, և նախարարական դրութեամբ բաժանեալ ի մէջ իւրեանց, ուստի և անմիաբան՝ չէին կարող զդէմ ունել երկու տէրութեանց միանգամայն. հարկ էր նոցա յարել ի մին կամ ի միւսն, և այս հարկն էր պատճառ, որ Հայք եղան ի վաղուց երկու, արևելեան և արևմտեան, այլով բանիւ՝ յունական և պարսկական կուսակցութիւն, որոց մերթ մին կը զօրանար և մերթ միւսն։ Այսպէս Հայաստան բաժնուեցաւ երկու, Պարսից բաժինն էր Խոսրովու, Յունացն՝ Արշակայ։ «Եւ հաստատեցին զայս խորհուրդ, ընդ երկու զաշխարհն բաժանեցին։ Բաժին կողմանն Պարսից էր թագաւորին Խոսրովու, և բաժին մասինն Յունաց էր Արշակայ։ Բայց և ի նոցանէ բազում գաւառք կրճեալք հատեալք այսր անդր, և մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն»։

**25.** Բուզանդ կը թուի այս միջոցին մեռած, ինչպէս այլուստ ևս կը տեսնուի (Բուզ. Զ. Ե.), ուստի և չգիտեր զպատերազմն որ ծագեցաւ այս երկու ստուեր թագաւորաց մէջ, զմահն Արշակայ, և զխսպառսպուռ բարձումն թագաւորութեան նորա, վասն որոյ կը լռելու. «Բայց սակայն երկոքեան թագաւորքն Արշակունիքն ի մէջ երկու բաժնացն սահմանս արկեալ հաստատէին խաղաղութեամբ, և երկիրն Հայոց, երկոքեան բաժինքն, երկուց թագաւորացն հնազանդէին, իւրաքանչիւր բաժին իւրաքանչիւր թագաւորի. բայց սակայն մեծ էր Խոսրովու բաժինն քան զԱրշակայ»։

**26.** Զարմանալի է արդարև, թէ ինչպէս Հռոմայեցիք յանձն առին այս անհաւասար բաժանումը։ Սակայն լաւ աշխարհացոյց մը բաւական է ցուցնել մեզ պատճառը։ Հռոմայեցիք, ռազմագէտ ժողովուրդ՝ չնայեցան այն բաժնին փոքրկութեան, քանզի թէպէտ փոքր՝ էր սակայն կարևոր, վասն զի ունէր զԾոփս (Չորրորդ Հայք), զոր կարգեցին և ամրացուցին հետզհետէ կայսերք, մանաւանդ Յուստինիանոս (Նորք. ԼԱ.), ընդ որ էր մուտ ի Միջագետս, մանաւանդ թէ էր իսկ Միջագետք կամ Միջագետք Ասորւոց։ (Ժամանա-

*կագր. Եղես. Գիրք Դ. 37։ Եւագր. առ Ասսեմ. Հտ. Ա. 395, 273։ Գաւազանագ. Երուկղ., և ի մերոց՝ Կիրակ., Ինճիճ. Ստորագր. Հին Հայաստ. էջ 77)։ Բուզանդ յիշատակելով ապա համառօտիւ Արշակունեաց թագաւորութեան բաժանման տխուր արդիւնքը—«Բազում գաւառք յերկոցունցն հատան, նուազեաց բաժանեցաւ ցրուեցաւ թագաւորութիւնն Հայոց, պակասեաց յիւրմէ մեծութենէն յայն ժամանակն և յապայ»՝—կու տայ վախճան իւր պատմութեան,ստիպելով զմեզ խնդրել այլ աղբիւր։*



# ԳԼՈՒԽ Բ.

## ՀԱՅՔ ՑԵՏ ԲԱԺԱՆՄԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ, ՄԻՆՉԵՒ Ի ԲԱՐՁՈՒՄՆ ՏԷՐՈՒԹԵԱՆՆ ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ։

*1. Աղբիւր յետ Բուզանդայ՝ Խորենացին. Ժամանակ սորա: 2. Խտիր նորա ի Բուզանդայ: 3. Անպատեհութիւնք սխալ ժամանակագրութենէ Խորենացւոյն: 4. Ըստ Խորենացւոյն պարագայք որ չեն հաւանական: 5. Թէ Խորենացւոյն մատեանն թուի յետին գործ: 6. Կարէ՞ առնուլ իբրեւ աղբիւր: 7. Արշակ վերջին ի բաժնին Յունաց: 8. Գանձք Արշակայ. Պատերազմ վասն այսր. Մահ Արշակայ. Բարձումն թագաւորութեան Հայոց ի բաժնին Յունաց: 9. Նախարարք մեկնին յԱրշակայ երթալ առ Խոսրով. Գազաւոն: 10. Կաթողիկոսութիւն մեծին Սահակայ: 11. Հաւանական ժամանակ Բուզանդայ: 12. Վռամշապուհ: 13. Խնդրուածք Սահակայ: 14. Հին ինչ պարսկական օրէնք: 15. Համազասպ Մամիկոնեան փեսայ Սահակայ. Հրովարտակն Վռամայ ըստ Խորենացւոյն: 16. Իշխանութիւն Վռամշապհոյ ըստ Խորենացւոյն: 17. Վռամշապուհ: 18. Երթ Սահակայ առ Յազկերտ: 19. Խորամանկ քաղաքականութիւն Յազկերտի. Որդին Շապուհ կը տրուի թագաւոր Հայոց: 20. Հայք կը գրգռին. Ներսէս Ճիճրակացի: 21. Սահակ այս անիշխանութեան ժամանակ. Թուղթք նորա ըստ Խորենացւոյն. Մեսրոպ եւ Վարդան կը ղրկուին ի Կոստանդնուպոլիս: 22. Նոյն պատմութիւն ըստ Կորեան: 23. Հրաւէր առ Սահակ ի բաժնէն Պարսից: 24. Կը ղրկուին աղաչաւորք առ Վռամ: 25. Ամրութիւնք Կարնոյ. Թէոդոսուպոլիս: 26. Դիտողութիւնք զնկարագրէ Խորենացւոյն վասն Կարնոյ: 27. Արտաշիր Կ՛ամբաստանուի. Խրատ Սահակայ առ Նախարարս: 28. Արտաշիր եւ Սահակ կոչին ի դուռն: 29. Վռամ ընկենու զԱրտաշիր թագաւորութենէ եւ զՍահակ կաթողիկոսութենէ. Սուրմակ՝ կաթողիկոս:*

**1.** Յետ Բուզանդայ մի միայն աղբիւր մեր է Խորենացւոյն պատմութեան վերջին մասն, այն է Գ. գպրութեան ԽԲ. գլխէն մինչեւ ի վախճան գրոյն։ Բայց հարկ է մեզ նախ ստուգիւ գիտել, թէ ո՛ր դարու մարդ է նա եւ երբ գրեց իւր պատմութիւնը։ Այս խորհրդաւոր անձին, եթէ է արդարեւ պատմական անձն՝ ինչպէս ծննդեան եւ մահուան՝ նոյնպէս պատմութեան յօրինման ժամանա-

կին վրայ ստոյգ ինչ ասել դժուարին է. ինչ որ մեծ հաւանութեամբ բուն իսկ պատմութենէն գուշակելով կրնանք ըսել՝—եթէ ճշմարիտ է պատմութիւնն—է այս։ Որովհետեւ Խորենացին բերելով զպատմութիւն իւր մինչեւ ի մահն Սահակայ եւ Մեսրոպայ (441)՝ կը դադրի եւ չյիշեր ամենեւին Վարդանանց պատերազմը, որ եղաւ 450-ին՝ կը հետեւի թէ մահ նորա եղած է ի մէջ ամացն 441 եւ 450։ Եւ որովհետեւ կ՚ըսէ, թէ էր արդէն ծերացեալ երբ կը գրէր այն պատմութիւնը՝ եթէ դնենք զնա 75-ամեայ յամին 445 իբր հաւանական թուական մահուան նորա՝ ծնունդ նորա լինի ի սկզբան թագաւորութեանն Պապայ (368)։ Այս հաշիւ է բնական։ Եթէ ծննդեան թուականը տանինք ևս ամօք ինչ յառաջ, մահուան թուականը չենք կրնար տանել յետս, քանզի Վարդանանց պատերազմն է սահման. եթէ չդնենք այս սահմանը մահուան նորա՝ չենք կրնար մեկնել Վարդանանց պատերազմը չյիշելուն պատճառը։ Արդ եթէ Խորենացին էր ժամանակակից Պապայ, ի՞նչպէս կրնար յօրինել զՊապայ այն պատմութիւնն հակառակ երկու ժամանակակից պատմչաց, Բուզանդայ եւ Ամմիանու, դնելով զնա առ Թէոդոսիւ Ա. (379—395), եւ գլխատեալ հրամանաւ նորա, մինչ գիտենք Ամմիանոսէ, թէ սպանումն նորա եղաւ իբր տասն ամօք յառաջ առ Վաղեսիւ դաւով։

**2.** Ի թագաւորութենէն Խոսրովու Կոտակայ մինչեւ յԱրշակ Գ, կամ մինչեւ ի բաժանումն թագաւորութեանն ինչ որ պատմեցինք ի Բուզանդայ՝ բազմօք կը տարբերին ի պատմելոյն ի Խորենացւոյն։ Այս տարբերութիւն կը տեսնուի նաեւ ի պատմութեան բաժանման աշխարհին Հայոց։ Մինչ ըստ Բուզանդայ, ինչպէս տեսանք, նախարարք կը խնդրեն յարքայէն Պարսից այլ թագաւոր, եւ կը տրուի նոցա Խոսրով փոխանակ Արշակայ, որ խոյս կուտայ առ Թէոդոս ընդ որոյ իշխանութեամբ կամ պաշտպանութեամբ էր նա, եւ ապա երկուց տէրութեանց միաբան հաւանութեամբ կը բաժնուի Հայաստան խսպառ՝ ըստ Խորենացւոյն՝ Տապուհ (Բ. թէ Գ՝ չէ յայտ) որ յաղթուած էր ի մեծէն Թէոդոսէ հօրէն Արկադեայ՝ կը խնդրէ հաշտութիւն, եւ Արկադ կը հաճի, քանզի զօրավարք նորա ձանձրացած էին անդուլ պատերազմներէ, ուստի եւ յանձն առին բաժնել զՄիջագետս եւ զՀայաստան։ Զայս տեսնելով Արշակ Պապայ որդին, որ ըստ Խորենացւոյն ի Թէոդոսէ դրուած էր թագաւոր զկնի Վարազդատայ՝ կը թողու զԱյրարատ, իւր հարց թագաւորութիւնը, եւ կ՚երթայ տիրել ի բաժնին Յունաց, ընտրելով ունենալ փոքր բաժին եւ ծառայել քրիստոնեայ թագաւորի՝ քան տիրել մեծ մասին, եւ լինել ընդ իշխանութեամբ հեթանոսաց։ Եւ որովհետեւ Պարսից

բաժնին նախարարք թողլով իւրեանց երկիրներն գացած էին Արշակայ հետ ի բաժին անդր Յունաց՝ Շապուհ կը գանգատի առ Արշակայ, և նա կը պատասխանէ, թէ նախարարք գացած էին իւրեանց կամօք և ոչ բռնութեամբ, վասն զի չաւին յանձն լինել ընդ պարսիկ մարզպանաւ։ Զայս լսելով Շապուհ՝ կը դնէ իւր բաժնին վրայ թագաւոր քրիստոնեայ Արշակունի, Խոսրով անուն, և կը հրաւիրէ զնախարարս Հայոց իւրոյ բաժնին երդմամբ և մուրհակաւ՝ թէ անշրջելի էր իւր այս հրամանն։ Նախարարք ընդունելով հրաւէրը, տեսնելով ևս մուրհակը՝ կ՚երթան իւրաքանչիւր յերկիր իւր բաց ի սակաւուց ոմանց։ Ահա բանք Խորենացւոյն. «Իմացեալ Շապհոյ, թէ թերուզիզ է Արկադ՝ խօսի ընդ նմա ի խաղաղութիւն, քանզի էր պարտեալ հարեալ ի հօրէ նորա մեծէն Թէոդոսէ։ Յանձն առնու և Արկադ առնել զհաշտութիւն, առաւել յիւրոց զօրագլխաց. զի թէպէտև յԱստուծոյ էր պարգևեալ զյաղթութիւն յամս կենաց երանելոյն Թէոդոսի՝ սակայն զօրագլուխքն վաստակեալ՝ ձանձրացեալ լինէին յաշխատութենէ հանապազորդ պատերազմացն։ Վասն որոյ հաւանեալ կամաւ յանձն առին բաժանել զՄիջագետս և զՀայոց աշխարհս կրկին սահմանադրութեամբ։ Վասնորոյ թողեալ Արշակայ զբուն թագաւորութիւն հարց իւրոց զԱյրարատ և զամենայն մասն բաժնին Պարսից՝ գնաց տիրել արևմտեայ կողմանց աշխարհիս մերոյ որ ի մասն բաժնին Յունաց, ոչ միայն մօրն աղագաւ, որ էր ի կայսերական քաղաքին (ըստ նախընթաց գլխոյն Թէոդոս յարձակելն զերկուս որդիս Պապայ զԱրշակ և զՎաղարշակ՝ անոնց մայրը պահած էր իբրև պատանդ ի Կոստանդնուպոլիս. բայց այս պատմութիւն կարօտ է հաստատութեան), այլ լաւ համարեալ նուազ կողմանն տիրել և ծառայել քրիստոնեայ թագաւորի, և ոչ յոլովից իշխել և մտանել ընդ լծով հեթանոսաց։ Գնացին զհետ նորա հանդերձ կանամբք և որդւովք և նախարարութիւնք որ ի բաժնի Շապհոյ, թողլով զիւրաքանչիւր արարս և գեւղս և զդաստակերտս։ Ընդ որ զչարեալ Շապհոյ՝ գրէ առ Արշակ, թէ Ընդէր գրգռեցեր զպատերազմ ի մէջ իմ և կայսեր, տանելով զնախարարութիւնս իմոյ բաժնիս։ Եւ պատասխանի լսէ յԱրշակայ, թէ Վասնզի ոչ համբերէին ընդ պարսիկ առաջնորդաւ վարել՝ եկին զհետ իմ. և արդ եթէ հաւատասցիս ինձ զմասինդ քո իշխանութիւն, որպէս և կայսր զիւրոյս՝ պատրաստ եմ ի պաշտել զքեզ՝ որպէս զկայսր. ապա թէ ոչ է հաճոյ քեզ այս, և իւրեանց կամօք դարձցին նախարարքս՝ ոչ արգելում։ Զայս լուեալ Շապհոյ՝ թագաւորեցոյց Հայոց ի վերայ բաժնի իւրոյ զԽոսրով ոմն ի նմին ազգէն Արշակունեաց, և առ նախարարս իւրոյ մասինն որ եկեալ էին զհետ

Արշակայ՝ գրեաց հրովարտակ, որ ունէր պայս․ Դիւցազանց քաջ, Տապուհ արքայից արքայ․ Նախարարաց Հայոց, որոց կալուած իշխանութեան լիմ բաժնին հատան՝ ողջոյն շատ շնորհեմ ձեզ։ Թէպէտ ոչ ազատաբար արարեալ թողէք զիւրաքանչիւր իշխանութիւնս, և մեզ ոչինչ նեաղ էր ի ձէնջ՝ սակայն ըստ տիրաբար խնամոց գթացաք ի ձեզ և յաշխարհդ ձեր․ զմտաւ ածեալ եթէ ոչ կարեն հօտք առանց հովուաց լինել և հովիւք առանց բարերոք վերակացուի․ վասնորոյ թագաւորեցուցաք ձեզ զԽոսրով ոմն ի դենէ ձերմէ և յազգէ բնիկ ձերոյ տէրութեանդ։ Արդ դարձեալ ձեր յիւրաքանչիւր արարս՝ իշխեցէք որպէս և ցայժմ։ Երդուեալ ի հուր և ի ջուր և ի փառս անմահից իմոց նախնեաց, զի առանց նենգութեան և պատրանաց արարաք զայդ, և անշրջելի պահեմք։ Իսկ այնք որք ոչ լուիցեն հրամանաց մերոց՝ զտունս նոցա հանդերձ գիւղօք և դաստակերտօք հրամայեցաք ունել յարքունիս։ Ողջ լերուք։ Իբրև լուան նախարարքն Հայոց, այնք որք ունէին զիշխանութիւն ի գաւառս բաժնին Պարսից, թէ կացոյց Տապուհ թագաւոր հաստատեալ Արշակունի, և զմուրհակ ուխտին տեսին՝ թողեալ զԱրշակ դարձան ի բնակութիւնս իւրեանց» (Խոր. Գ. ԽԲ. ԽԳ.)։ Թէ այս երկու տարբեր պատմութեանց, Բուզանդայ և Խորենացւոյն, որն է ընտրելի ի մասին ստուգութեան՝ դիւրին է որոշել։ Ապաքէն նախամեծար է Բուզանդ ոչ միայն իբրև ժամանակակից և ականատես, այլև ազատ յանտեղութեանց, որովք լի է պատմութիւնն զոր բերինք ի Խորենացւոյն։ Առաջին անտեղութիւն յայսմ մասին պատմութեան Խորենացւոյն, այն է ի պատմութեան բաժանման թագաւորութեանն՝ է ժամանակագրութիւնն, որում անգիտանալ անհնար էր նմա՝ եթէ էր ժամանակակից։ Այս բաժանումն, զոր, ինչպէս տեսանք, կը դնէ Խորենացին առ Արկադեաւ՝ եղած է 384-ին, և կը կշռի մեծին Թէոդոսի ժամանակին (379—395) և Արտաշրի Բ-ի (380—384) վերջին, և աւելի հաւանականապէս՝ Շապհոյ Գ-ի (384—389) առաջին տարւոյն, ոչ թէ Արկադեայ ժամանակին (395—408), որ բազում ամօք յետոյ է։ Առ Թէոդոսիւ և առ Շապհով Գ. է նոյնպէս մահն Արշակայ և բարձումն թագաւորութեանն ի բաժնին Յունաց (386 կամ 387). իսկ վերջ թագաւորութեանն Խոսրովու և սկիզբն թագաւորութեանն Վռամշապհոյ (391 կամ 392) կը կշռին Թէոդոսի և Վռամայ Դ-ի (389—399) ժամանակներուն։ Եթէ ընթերցողն առնու աշխատութիւն յանձն միտ դնել այս ժամանակագրութեան, որ հաւանականագոյն, մանաւանդ թէ ստուգագոյնն է՝ կրնայ քաջ տեսնել Խորենացւոյն թուականի մեծամեծ սխալներն, և պարտի խոստովանել,

*թէ Խորենացին չկարէ լինել մատենագիր Ե. դարու, և ժամանակակից, ինչպէս կը կարծուի առհասարակ՝ իւր պատմութեան այս մասին։*

**3.** *Խորենացւոյն սխալ ժամանակագրութեան մեծ անպատեհութիւնն այն է, որ քանի մը գլխաւոր դէպք ըստ հաշուի Խորենացւոյն գրուելով իբր տասն կամ աւելի ամօք յետոյ քան զբուն թուական իւրեանց՝ կը խախտեն Թագաւորաց տարիներն, հակառակ ժամանակագրութեան նորին իսկ Խորենացւոյն, կ'անձկանայ ժամանակի միջոցն, այնպէս որ դժուարին լինի զետեղել պատմութեան մնացորդ մասը։ Զոր օրինակ, եթէ դնենք Թագաւորութեան բաժանումն առ Արկադեաւ, այսինքն փոխանակ դնելու 384-ին, դնենք յամին 396 կամ աւելի անագան՝ ժամանակի միջոցն անտի մինչև 428, որ է ստոյգ Թուական բարձման Թագաւորութեանն՝ կը նուազի, ուստի և հարկ լինի վերջին սահմանը, 428, յետս մղել նոյն չափ ամօք, և ընդ նմին յետս կը մղուին շատ դէպք, զորօրինակ Վռամշապհոյ Թագաւորութեան Թուականն, մահն Սահակայ և Մեսրոպայ, պատերազմն Վարդանանց, Վահանայ մարզպանութեան Թուականն այլովքն հանդերձ. և որովհետև այս ամենայն դէպք կապուած են ընդ պատմութեան Սասանեան Թագաւորաց, որոց Թուականներն են որոշ՝ հարկ է այնուհետև և զնոսա ևս խախտել և կռուել ընդ արտաքին պատմութեան։ Եւ զի անտեղի է այս՝ հարկ է մեր պատմութեան հայրը դնել սխալած, կամ որպէս ասէ Գաթըրճեան՝ «ի Մովսիսէ առ Մովսէս բողոք առնուլ», և կամ, որ լաւագոյն է՝ «Մովսեսիւ զՄովսէս ուղղել»։*

**4.** *Թող զայս՝ Խորենացին կը յեռու իւր պատմութեան մէջ ուրեք ուրեք պարագաներ՝ որ չեն հաւանական կամ հակառակ կ'ելլեն ուրիշ պարագաներու։ Զոր օրինակ չէ հաւանական, թէ նախարարութիւնք Պարսից բաժնին Արշակայ հետ կու գան ի բաժինն Յունաց հանդերձ կանամբք և որդւովք, թողլով զզօրս իւրեանց և զկալուածս, գիւղեր, դաստակերտներ, յորոց էր ապրուստ նոցա. նոյնպէս թէ Գազաւոն ի դառնալն առ Խոսրով՝ տարաւ ընդ իւր Յունաց բաժնին նախարարները. թէ սոքա իբրև պայման խնդրեցին ի Խոսրովայ՝ պաշտպանել զկալուածս իւրեանց ի գործակալաց կայսեր, և թէ Խոսրով խոստացաւ պաշտպանել՝ եթէ պատերազմել անգամ հաներ կայսեր դէմ։ Հակասական է, թէ Արշակ վերջին, որոյ վասն կ'ըսէ թէ չկամելով հեթանոս տեառն ծառայել, թողուց զԱյրարատ զժառանգութիւն իւրոց նախնեաց և ընտրեց զբաժինն Յունաց՝ յետոյ դարձաւ և խնդրեց ի Շապհոյ նաև զբաժինն Պարսից և կը խոստանար ծառայել նմա։*

**3.** Այս ամենայն—որչափ և հակառակ թուի շատերուն, որ գիտեն զԽորենացին մատենագիր Ե. դարու—կ'ստիպէ զմեզ ըսել, թէ Մովսէսի Խորենացւոյ անուամբ ծանօթ մատեանն է աւելի յետին գործ, զոր հեղինակն, ո՛ ոք և է՝ կ'ընծայէ Մովսէսի ումեմն Խորենացւոյ քերթողահօր, որ որպէս թէ ապրեցաւ մինչև ի վերջ կոյս Ե. դարու։ Ըստ մեզ է թերևս Սիւնեցին Մովսէս քերթող Է. դարու, ինչպէս լեզուէն ևս յայտնի է։ (Համեմատէ Գ. դպրութեան ԿԲ. գլուխը)։

Խորենացւոյն պատմութիւնն համարելու համար գրուած յետոյ քան զԵ. դար՝ ունինք բաւական պատճառներ։ Թող Մ. Լա Գարիէրի գիւտը, զոր հրատարակեց թելադրեալ Խորենացւոյն Բ. դպրութեան ՁԳ. գլխէն, իբրև առնուած Սեղբեստրոսի վարուց պատմութենէն, որ կը կարծուի յետոյ քան զժամանակն որ կը տրուի Խորենացւոյն՝ բաւական մեծ պատճառ է Փարպեցւոյն, որ գրած է ի վերջ կոյս Ե. դարուն՝ յիշելով մանր բոլոր հայ պատմիչներն որ յառաջ քան զնա, ինչպէս զԱգաթանգեղոս, զԲուզանդ և զԿորիւն՝ լռելն զպատմութենէ Խորենացւոյն, նա՛ թուելն չգիտել իսկ, թէ կար այն դարուն մէջ Մովսէս Խորենացի անուն պատմիչ. մինչ Փարպեցին պարտ էր մանաւանդ գիտել այն պատմութիւնն, եթէ, ինչպէս կ'ըսէ մատեանն՝ գրուած էր այն ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ մարզպանի, որ էր ընկեր և գործակից Վահանայ, բարեկամին և պաշտպանին Փարպեցւոյն։

Արդարև կան առ Փարպեցւոյն բանք ինչ կամ ասացուածք, որ կը գտնուին նաև առ Խորենացւոյն, զոր օրինակ ի նկարագրի Փարպեցւոյն գաւառին Այրարատու՝ «Հոծեալս էրէովք կճղակաբաժնիւք և որոճայնովք», կը գտնենք առ Խորենացւոյն ի նկարագրի գաւառին Կարնոյ—«Լերինքն լի են երէովք կճղակաբաշխիւք և որոճայնովք»։ Այս նմանութիւնն է թերևս պատահական և է դոյզն ինչ, բայց ոչ նոյնպէս գիւտի գրոյն պատմութեան հատուածը, որ գրեթէ բառ առ բառ նոյն է յերկոսին։

ԱՌ ՓԱՐՊԵՑԻՈՅՆ.

«Վաղվաղակի ստիպով առաքեալ դեսպան զՎահրիճ անուն ումն.. առ այր մի երեց Հաբէլ անուն... փութանակի հասանէր առ սքանչելի եպիսկոպոսն Դանիէլ. Նախ ի նմին Դանիելէ ինքն (Վահրիճ) տեղեկանայր.. և առեալ առ սուրբ հայրապետն Հայ-

ԱՌ ԽՈՐԵՆԱՑԻՈՅՆ.

«Վասնորոյ յաշխարհէս մերոյ առաքեաց հրեշտակութեամբ զայր մի պատուական և հաւատարիմ իւր... Վահրիճ անուն... առ Հաբէլ. զոր առեալ, և երթեալ նովաւ հանդերձ քաջ հմտացեալ ի Դանիելէ... եկեալ եառուն ցմեծն Սահակ և Մեսրոպ։ Որոց... ան

ոց Սահակ և առ երանելին Մաշթոց հասանէր... *Բայց տեղեկացեալ գիտացին*՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար մուրացածին այնուիկ գծագրութեամբ։
Չկնի այսորիկ ինքնին Մեսրովբ իջանէ ի Միջագետս հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, և ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն՝ անցանէ յԵդեսիա առ Պղատոս ումն ճարտասան հեթանոս, իշխան դիւանին։ Եւ նորա խնդութեամբ ընկալեալ և զոր ինչ միանգամ ի միտ առնոյր բան հայերէն յինքն առեալ և շատ ջանացեալ և ոչ օգտեալ՝ զտգիտութիւն խոստովանեաց հռետորըն. և զայլ ումն ասելով յոյժ հասու, վարդապետ իւր լեալ յառաջագոյն, և ապա առեալ զճարտարացն գրեան ի նոյն դիւանէն Եդեսեայ և գնացեալ քրիստոնէութեան հաւատոց, որոյ անունն Եպիփանոս. զոր խնդրեալ գտցես լցուցանել զփափաքդ քո։

Յայնժամ Մեսրովբայ օգնականութիւն ի Բաբելոնէ եպիսկոպոսէ գտեալ և անցեալ ընդ Փիւնիկէ՝ ի Սամոս դիմէ։ Քանզի Եպիփանու վճարելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռուփանոս, հրաշալի արուեստիւ հելլէն գրչութեան, որ ի Սամոս էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրովբայ և յայսմ ևս անշահ մնացեալ՝ յաղօթս ապաւինի. և տեսանէ ոչ ի քուն

*ղեկացեալ գիտացին*՝ ոչ լինել բաւական այնու նշանագրօք ըստոյգ հոլովել զհեգենայ բառից հայկականաց հագներգաբար՝ մուրացածոյին այնուիկ գծագրութեամբ։

Չկնի այսորիկ ինքնին Մեսրոպ իջեալ ի Միջագետս հանդերձ աշակերտօք առ նոյն Դանիէլ, և ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն՝ անցանէ և յԵդեսիայ առ Պղատոս ումն ճարտասան և հեթանոս՝ իշխան դիւանին։ Եւ նորա խնդութեամբ ընկալեալ, և զոր ինչ միանգամ ի միտ առնոյր բան հայերէն յինքն առեալ, և շատ ջանացեալ և ոչ օգտեալ՝ զտգիտութիւն խոստովանեաց հռետորըն։ Եւ զայլ ումն ասելով յոյժ հասու, վարդապետ իւր եղեալ յառաջագոյն, և ապա առեալ զճարտարացն գրեան ի նոյն դիւանէն Եդեսիայ, և գնացեալ քրիստոնէութեան հաւատոց, որոյ անուն Եպիփանոս. զոր խնդրեալ գտցես լցուցանել զփափաքդ քո։

Յայնժամ Մեսրոպայ օգնականութիւն ի Բաբելոնէ եպիսկոպոսէ գտեալ, և անցեալ ընդ Փիւնիկէ ի Սամոս դիմէ. քանզի Եպիփանու վճարելով զկենցաղս՝ թողեալ լինի աշակերտ մի անուանեալ Հռոփանոս, հրաշալի արուեստիւ հելլէն գրչութեամբ, որ ի Սամոս էր միայնացեալ։ Առ սա երթեալ Մեսրոպայ, և յայսմ ևս անշահ մնացեալ՝ յաղօթս ապաւինի. և տեսանէ ոչ ի քուն երազ և

ճրագ և ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն՝ թաթ ձեռին աջոյ, գրելով ի վերայ վիմի. զի որպէս ի ձեան՝ վերջք գծին կուտակեալ ունէր քարն։ Եւ ոչ միայն երևութացաւ, այլ և հանգամանք ամենիցն որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։

Եւ յարուցեալ յաղօթիցն ե-ստեղծ զնշանագիրս մեր հանդերձ Հռոփանոսիւ, կերպաձևեալ զգիրն առ ձեռն պատրաստ Մեսրովբայ, փոխագրելով զհայերէն աթութայսն ըստ անսայթաքութեան սեղոբայիցն ի Հելլենացւոյն»։

ոչ յարթնութեան տեսիլ, այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ՝ գրելով ի վերայ վիմի Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ւ. զի որպէս ի ձեան՝ վերջք գծին կուտեալ ունէր քարն։ Եւ ոչ միայն երևութացաւ, այլ և հանգամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ։

Եւ յարուցեալ յաղօթիցն, եստեղծ զնշանագիրս մեր՝ հանդերձ Հռոփանոսիւ, կերպաձևեալ զգիրն Մեսրոպայ առձեռն պատրաստ, փոխագրելով զհայերէն աթութայսն ըստ անսայթաքութեան սիւղոբայից Հելլենացւոց»։

Ո՞վ չտեսներ մեծ նմանութիւնը, որ կայ այս երկու խմբագրութեանց մէջ. բայց այս բաւական չէ ցուցնելու, թէ Փարպեցին առած է ի Խորենացւոյն, և հետևցունել՝ թէ ունէր նա զԽորենացին ի ձեռին։ Ինչպէս տեսանք՝ հակառակը մանաւանդ կը տեսնուի Փարպեցւոյն լռութենէն. ուստի չէ անհաւանական, թէ առ Փարպեցւով կար անանուն գրուած մը իբրև պատմութիւն հայերէն նշանագրաց գիւտին, և այն անանուն գրուածէն առած են թէ Փարպեցին և թէ Խորենացին, ինչպէս կը կարծեն ոմանք (Նորայր Բիւզ.)։

Գալով առանձինն վերոյիշեալ հատուածին՝ դիտել արժան է, որ Փարպեցին այն հատուածին մէջ միայն ունի չորիցս Մեսրոպ անունը, մինչ բոլոր պատմութեան մէջ, ինչպէս նաև Կորիւն՝ համակ կ'անուանէ զնա Մաշթոց, որ է եկեղեցական պատուանուն և կը նշանակէ ըստ Յունաց *բարձրութիւն*. իսկ Մեսրոպ անունը, որ կը նշանակէ պարսկերէն քարտուղար՝ է անուն պաշտօնին նորա յաշխարհականութեանն։ Այսպէս Փարպեցւոյն՝ հակառակ իւր սովորութեան կոչելն զնա Մեսրոպ այն հատուածին մէջ՝ բաւական նշան է, թէ այն հատուածն է ուրիշ գրչէ, և այս չկարէ լինել Խորենացին, որ ունի ուրիշ յայտնի նշան թէ է յետոյ քան զՓարպեցին, այն է դնելն եօթն ձայնաւորներն միայն իբրև գիւտ Մեսրոպայ, մինչ առ Փարպեցւոյն չկայ ձայնաւորի յիշատակութիւն։

(Ցետնագոյն կարծիք է, թէ բաղաձայնք կային եբր 29 թուով. Մեսրոպ ձայնաւորները միայն եմոյծ)։

Կարնոյ նկարագիրն կը թուի գրուած յետ շինութեան այն քաղաքին առ Յուստինիանոսիւ (527—565), և կայ իսկ աւանդութիւն, թէպէտ յետին՝ թէ շինութեան այն քաղաքին ի Յուստինիանոսէ Խորենացին էր վերակացու։

Ոմանք իբրև ստոյգ նշան, թէ պատմութիւն Խորենացւոյն գրուած է ի Ե. դարու՝ կը բերեն զլեզուն իբրև աշակերտի թարգմանչաց. բայց այս ևս չունի զօրութիւն։ Թող որ Խորենացւոյն հայերէնն շատ հեռու է Եզնկայ, Բուզանդայ, Հին և Նոր կտակարանաց հայերէնէն՝ լեզուն ևս չէ միօրինակ, միոյ գրչի գործ, այլ խառն. կան ի նմա տեղեր, ինչպէս ԿԲ. գլուխն, որ ունի Է. դարու յունաբանութիւնը. և վիճակ Հայ կղերին որ նկարագրուած է Ողբին մէջ՝ կը պատշաճի Է. դարուն մանաւանդ քան Ե-ին։

6. Այս ամէնը կը համարձակեցունէ զմեզ ըսել, թէ Խորենացւոյն պատմութեան վերջին մասն, առ ի չգոյէ ուրիշ աղբեր, (բաց ի պատմութենէ Կորեան հայերէն նշանագրաց գիւտին և թարգմանութեանց վրայ), կրնանք գործածել միայն մեծ զգուշութեամբ։ Առնունք ուրեմն պատմել զանցս, որ անցին ի մէջ երկուց թագաւորաց, և կը գտնուին առ Խորենացւոյն միայն և զորս չյիշեր Բուզանդ, որ յետ բաժանման և տիրելոյ երկուց թագաւորաց «բաժանաւորաց»՝ կը դադրի պատմելէ, թերևս և ապրելէ։

7. Արդ ըստ Խորենացւոյն՝ Արշակայ հետ գացող նախարարներէն ոմանք, առնլով յետոյ խոստումն ի Շապհոյ Գ-է կամ ի յաջորդէ նորա ի Վռամայ Դ-է (389)՝ դարձան ի բաժինն Պարսից առ Խոսրով, և առին իւրեանց ժառանգական երկիրներն. այլք մնացին առ Արշակայ, և կորուսին իւրեանց կալուածներն։ Առ Արշակայ մնացող նախարարներէն գլխաւորք էին Դարա Սիւնի, որ սպարապետ եղաւ Արշակայ, Գազաւոն Կամսարական և Պերոզ Գարդմանացի։ Ի սոսա յարեցան Ատատ Գնունի, Կենան Ամատունի, Սուրա Մոկացի, Ռըստոմ Առաւենեան և այլք ոմանք ոչ նշանաւորք.— «Նախարարք Հայոց, այնք որք ունէին զիշխանութիւն ի գաւառս բաժնին Պարսից (և եկեալ էին ընդ Արշակայ)՝ թողեալ զԱրշակ դարձան ի բնակութիւնս իւրեանց, բայց յերից պատանեաց սննդակցաց արքայի և ի մօտաւոր մերձաւորաց—Դարա որդի Բաբկայ տեառն Սիւնեաց, որ աներ էր Արշակայ, (աներ Արշակայ, ըստ Բուզանդայ ժամանակակցի, ինչպէս տեսանք՝ էր Մանուէլ Մամիկոնեան, և ոչ Բաբիկ Սիւնի), և Գազաւոն որդի Սպանդարատայ տեառն Շիրակայ և Արշարունեաց, և Պերոզ յազգէն Գարդմանացւոց. և ի

նոսին յարեցեալք՝ Ատատ յազգէն Գնունեաց, Կենան յազգէն Ամատունեաց, Սուրա յազգէն Մոկաց, Ռըստոմ Առաւենեան և այլք անյայտք ոմանք։ Վասնորոյ զժառանգութիւնս նոցա կալաւ Խոսրով յարքունիս հրամանաւ Տապհոյ, և ոչ եթող զկալուածս որդւոյ ի հայր, և ոչ եղբօր յեղբայր» (Խոր. Գ. ԽԳ.)։

Բայց նաև Ցունաց բաժնին նախարարներէն ոմանք, որոց մին էր Սահակ ոմն ասպետ, այսինքն Բագրատունի՝ չէին գոհ զԱրշակայ և կը խնդրէին առիթ՝ խոյս տալ առ Խոսրով։ Արշակ խեթիւ էր մանաւանդ ընդ Սահակայ, գրգռուելով իւր կնոջէն (որ ըստ Բուզանդայ՝ էր Մամիկոնեան, դուստր սպարապետին Մանուէլի, ինչպէս տեսանք արդէն), որպէս թէ Սահակ, որ էր լեալ աներ Վաղարշակայ, Արշակայ կրտսեր եղբօրն և գահակցին՝ մեռելոյ թագաւորութեան առաջին տարին (տես Խոր. Գ. ԽԱ.) պահած էր մեռելոյն թագաւորական զարդերն։ Կը թուի թէ նաև ազգականք Սահակայ կը հաստատէին զայս քսութեամբ։ Երկիւղ Արշակայ որպէս և կնոջ նորա, ինչպէս կ'երևի՝ այս էր, թէ Սահակ ունենալով ի ձեռին այն զարդեր կամ նշաններն՝ զհետ էր թագաւորելու։ Այս պատճառաւ Արշակ կը նեղէր զՍահակ, Խորենացւոյն բառով «չարչարեաց զնա», մինչև ստիպուիլ Սահակայ փախչել առ Խոսրով։ Սահակայ հետ ի բանի էին և Սուրէն Խոռխոռունի, Վահան Առաւեղեան և Աշխադար Դիմաքսեան, բայց չկրնալով աճապարել՝ մնացին, և կ'սպասէին պատեհ ժամու կատարել զխորհուրդ իւրեանց։ Խոսրով կ'ընդունի պատուով զՍահակ, կը պարգևէ նմա մեծամեծ կալուածներ, և կը կարգէ զնա սպարապետ.—«Բայց էին ոմանք ի նախարարացն, որ ունէին զիշխանութիւնս իւրեանց ի բաժնին Ցունաց առ Արշակայ, որպէս Սահակ ասպետ, որ էր լեալ աներ Վաղարշակայ, եղբօր Արշակայ, և խնդրեցին գալ առ Խոսրով. ընդ որում (Սահակ) խեթի հայէր Արշակ, հանապազ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ, որպէս թէ զարդ արքունական ունել նմա ի փեսայէն իւրմէ մնացեալ։ Ապա յայնժամ եղև քսութիւն սուտ զնմանէ յազգականաց իւրոց ի Սպեր գաւառէ, վասնորոյ չարչարեաց զնա Արշակ արքայ։ Եւ յայնմանէ խնդրէր Սահակ փախչել յԱրշակայ և անկանել առ Խոսրով. և խորհրդակից նմին իւր գործակցեալ լինէին Սուրէն Խոռխոռունի և Վահան Առաւեղեան և Աշխադար յազգէն Դիմաքսենից։ Բայց ի գնալն նորա ոչ ժամանեցին նոքա, խափանեալ ի զօրացն Արշակայ. թաքուցեալ զօղեցին ընդ կեղծաւորութեանն առագաստիւ, սպասեալ դիպող աւուր։ Բայց Խոսրով մեծապէս ուրախ եղև ընդ գալն Սահակայ ասպետի, և սպարապետ զնա ի վերայ զօրաց իւրոց կարգեաց և դարձոյց ի նա զկալուածս Հայ-

րենիս, և այլ աւանս հանդերձ ագարակօք պարգևեաց նմա յայնոցիկ ի ժառանգութենէ, որք ի բաժնոյն Պարսից առ Արշակայ մնացին (Խոր. Գ. ԽԳ, ԽԴ.)։

Զայնու ժամանակաւ ոմանք ի Վանանդեցւոց, որ էին անուանի յաւագակութեան, ապստամբելով ի Խոսրովայ՝ ապաւինեցան լեռնային տեղեր Արշակայ բաժնին մէջ, և յելուզակութեամբ կը խռովէին երկու թագաւորաց երկիրներն։ Սահակ ասպետ, սպարապետ Խոսրովու, ղրկուելով ասոնց վերայ՝ կը ցրուէ զնոսա.—«Զայսու աւուրբք ոմանք յազգէն Վանանդացւոց ապստամբեցին ի Խոսրովայ և ոչ յոք ապաւինեցան՝ այլ միայն ի մայրիս լերանց իւրեանց և յանձուկս Տայոց քարանց. յելուզակաբար արշաւանօք յէշխանութիւն երկոցունց թագաւորացն Հայոց՝ խռովէին զաշխարհս և անհանգիստ պահէին։ Յորոց վերայ չոգաւ սպարապետն Խոսրովայ Սահակ ասպետ, և զբազումս ի նոցանէ սատակեաց և զբազումս փախստական արար ի կողմանս Չորրորդ Հայոց։ Զի ոչ յերկիրն Խաղտեաց անկան, ի Յոյնս ապաւինելով, և ոչ առ թագաւորն Արշակ անցին, այլ զաւազակս ոմանս որ ի կողմանս Չորրորդ Հայոց էին ի սահմանս Ասորւոց՝ դիմեցին ապաստան առնել։ Քանզի Վանանդացիք զաւազակութեան գործ մեծ ցանկութեամբ գործէին, և որպէս ուղիղ իրք՝ ախորժելի թուէին նոցա։ Զորոց ձիգ զհետ մտեալ Սահակայ՝ վարէ յերկար մինչև ի սահմանս Մանանաղւոյ» (Խոր. Գ. ԽԴ.)։

Ց. Արշակ, չենք գիտեր ինչ պատճառաւ՝ կը տանէր զիւր գանձն Անւոյ ամրոցէն ի Ծոփս։ Սուրէն Խռխռունի, Վահան Առաւեղեան և Աշխադար Դիմաքսեան, զորս յիշեցինք վերագոյնն՝ յափշտակելով գանձը՝ կամին երթալ առ Խոսրով, բայց արգելուելով Սամելէ Մամիկոնենէ, բարեկամէն Արշակայ՝ կ'ապաւինին Մանանաղւոյ կողմերն անմատոյց այր մի։ Մինչ Սամէլ կը ջանար հանել զնոսա այրէն և առնուլ գանձը՝ Սահակ ասպետ որ զհետ էր աւազակներուն՝ կը հասնի հոն, և հալածելով զՍամէլ՝ կ'ազատէ պաշարուածներն այրին հանդերձ գանձիւն, և կը հասցունէ առ Խոսրով։ Աստի կը գրգռի պատերազմ ի մէջ Արշակայ և Խոսրովու։ Այս պատմութեան մէջ Խորենացին գեղեցիկ կը նկարագրէ զայրն և զհնարս Սամելի մերձենալոյ այրին».—Սուրենայ Խռխռունւոյ և Վահանայ Առաւեղինի և Աշխադարայ Դիմաքսենի գտեալ ժամ պատեհ, զի էր հանեալ զգանձն Արշակայ յամրոցէն Հանւոյ՝ տանել յաշխարհն Ծոփաց, զոր յափշտակեալ և կամեցեալ անցանել առ Խոսրով՝ ոչ ժամանեցին։ Քանզի աճապարեալ Սամելի Մամիկոնենի մտերմի Արշակայ, յոլովաձեռն գնդաւ զհետ մտեալ՝ փախստեայս արկանէ յամուր այրս ի գաւառին Մանանաղւոյ, յոր

մուտ ոչ գտանէր. բայց ի կողմանէ դոյզն ելք էին առ ի լթա-
ւալ և առաջի դրաց այրին սեպ էր ուղղորդ միապաղաղ, և ի վե-
րուստ պաղանձաւ քուաւոր որ Հայի յանդունդս խորաձորոյն, և որ
ինչ զերծանի՝ յանհնարին ուղխս սաստկութեան անկանի, անդադար
հոլովմամբ գլորեալ, ոչ ուրեք լինել ոտնկաւիւ։ Վասնորոյ տարա-
կուսեալ Սամէլ վարանէր առ անհնարութիւն տեղեացն։ Եւ ազդ
արարեալ Արշակայ՝ հրամայեաց արկղ գործել երկաթակապ, և քաջ
արանց ի ներքս մտանել, և այնպէս շղթայատող կարիւք ի վե-
րուստ ի վայր իջուցանել ի դուրս այրին։ Սակայն և ոչ այն ինչ
վնասեաց, քանզի յոյժ ի զատ պահէր ցիրդն։ Եւ մինչդեռ նոքա
յայնմ էին՝ լինէր իմն ըստ դիպուածոյ բախտի հասանել անդր
ասպետին Սահակայ բովանդակ գնդաւն Խոսրովայ, որով հետամուտ
յեյլուզակացն էր։ Թողեալ զնոսա՝ դիմէ ի վերայ այնոցիկ որք ընդ
այրին մարտնչէին, և հալածական արարեալ՝ հանէ զՍուրէն և
զՎահան և զԱշխադար հանդերձ գանձիւքն, փոյթ ընդ փոյթ
հասուցանէ առ Խոսրով։ Իսկ Խոսրով առեալ ի գանձուցն՝ հանէ և
մասն Շապհոյ. և հրամանաւ նորա տայ նոցա եւ դաստակերտս
ընտիրս և յարմարս յայնոցիկ ժառանգութենէ, որք ի բաժնոյն
Պարսից մնացին առ Արշակայ։ Եւ այս եղև սկիզբն պատերազմին
Արշակայ և Խոսրովու» (Խոր. Գ. ԽԵ.)։

Ո՛չ Արկադ (իմա Թէոդոս), ասէ Խորենացին, և ոչ Շապուհ (Գ)
օգնեցին Արշակայ և Խոսրովու այս պատերազմին մէջ, սակայն
չարգելեցին ևս զնոսա։ Ուստի երկու թագաւորք կռուեցան ի դաշտին
Երևել ի գաւառին Վանանդայ։ Կը յաղթուի Արշակայ զօրքը,
կ՚սպանուի Դարա Սիւնի սպարապետ Արշակայ, որ փախչելով հազիւ
կ՚ազատի քաջութեամբ Գազաւոնի Կամսարականի յասպետէն Սա-
հակայ, որ սաստկութեամբ կը հալածէր զփախստեայն։ Արշակ գալով
յԵկեղեաց՝ տրտմութենէն կը մեռնի (386 կամ 387) ոչ յետ բազ-
մաց հիւծական ախտիւ, «թագաւորն լաւ ի լաւաց թագաւորացն
Հայոց», ասէ Գաթըրճեան։—«Թէպէտ և ոչ եղեն ձեռնտու Շապուհ
և Արկադ (Թէոդոս) Խոսրովայ և Արշակայ, լինել զօրավիգն օգնա-
կանութեան առ ի տալ ընդ միմեանս պատերազմ՝ սակայն և ոչ
արգելլին զնոսա։ Եւ սպառեալ պատգամաւորութեանն՝ ժողովեալ
Արշակայ զզօրս իւր խաղայ ի վերայ Խոսրովայ։ Գնաց և Խոսրով
ի բանակէն իւրմէ առ ծովուն Գեղամայ, զոր Մուրսն կոչեն, ընդ
առաջ Արշակայ, զի մի ի սահմանս իւր իջցէ. և ոչ այնչափ ատա-
կեաց աճապարել, մինչև եգիտ զԱրշակ իջեալ յիւր սահմանն ի գա-
ւառին Վանանդայ։ Եւ պատահեն միմեանց ի դաշտին որ կոչի
Երևել, և տան պատերազմ ընդ միմեանս սաստիկ յոյժ։ Հարկանի

զօրն Արշակայ. մեռանի և սպարապետն նորա Դարա Սիւնի ի պատերազմին, և փախստական լինի Արշակ սակաւուք։ Եւ զհետ նորա մտեալ քաջին Սահակայ ասպետի սպարապետին Խոսրովայ՝ վարէր սաստկապէս։ Այն օր աՀագին նաՀատակութիւնս ցուցեալ Գագաւոնի որդւոյ Սպանդարատայ, բազում անգամ դարձեալ յարձակմամբ ցրուէ զհետամուտսն և տայր սպրապ ժամ գնալոյ Արշակայ։ Եւ դարձաւ Խոսրով ի տեղի իւր, և գնաց Արշակ յԵկեղեաց, և հիւանդացեալ անդ մաշարայական ախտիւք՝ ջերանի հիւծմամբ»։ Խորենացին կը յաւելու, թէ Յոյնք (իմա Թէոդոս) չդրին թագաւոր յիւրեանց բաժնին։ Այսպէս բարձաւ թագաւորութիւնն Արշակունեաց ըստ մասին, և արեւմտեան փոքր, բայց ծաղկեալ և բարգաւաճ մասն Մեծին Հայոց եղաւ նաՀանգ Հռոմէական.—«Եւ այնուհետև ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդէր նախարարացն այնր կողման քաջն Գագաւոն» (Խոր. Անդ)։

Խորենացին Հոս ԽԷ. գլխով կու տայ Համառօտ ինչ տեղեկութիւն զՄեսրոպայ, զորմէ պիտի խօսինք յետոյ երկայնագոյնս, առնլով մանաւանդ ի պատմչէն վարուց նորա և աշակերտէն, ի սքանչելւոյն Կորենէ։ Ուստի մատչինք այժմ ի կարգ պատմութեան մերոյ։

9. Նախարարք Յունաց բաժնին տեսնելով, թէ Հռոմայեցիք (Թէոդոս) չդրին թագաւոր իւրեանց բաժնին՝ դժուարելով խորհեցան երթալ առ Խոսրով, առ որ կը գրեն թուղթ, զորոյ օրինակն կու տայ մեզ Խորենացին, ինչպէս նաև Խոսրովայ պատասխանն առ նոսա.—«Տեսեալ նախարարացն Հայոց, եթէ ոչ կացուցին Յոյնք ի վերայ նոցա թագաւոր, և դժուարին վարկուցեալ զանառաջնորդն լինել՝ խորհեցան կամաւ Հնազանդել թագաւորին Խոսրովու։ Նմին իրի գրեն առ նա թուղթ օրինակ զայս. «Ստրատելատն Գագաւոն և ամենայն նախարարք Հայոց մասինն Յունաց. տեառն մերում Խոսրովայ արքայի կողմանն Այրարատոյ խնդալ։ Ինքնին, տէր, գիտես զմտերմութիւն մեր առ յիշեալ թագաւորին մերում Արշակայ, զոր մինչև ցօր վախճանին անշիջելի պաՀեցաք. և արդ խորհեալ եմք նոյնպէս ծառայել քեզ միամտութեամբ՝ եթէ Հաստատեսցես առ մեզ դաշամբք զերիս զայսոսիկ։ Առաջին՝ չյիշել զվանցանս մեր, զոր պատերազմեցաք ընդ քեզ ի Հարկէ և ոչ ի կամաց։ Երկրորդ՝ զի դարձուսցես ի մեզ զամենայն ժառանգութիւնս մեր որ ի մասինդ Պարսից, զոր Հատեր յարքունիս։ Երրորդ՝ Հնարել թափել զմեզ ի կայսերէ, զի մի վրդովեսցեն զբնակութիւնս մեր որ ունիմք իշխանութիւն յայսմ բաժնի։ Եւ զայս պայման ուխտի գրել և խաչ

հաստատել կնքեսցես, զոր տեսեալ՝ փութասցուք ի ծառայութիւն ձեր։ Ողջ լեր, տէր մեր»։ Ըստ Խորենացւոյն՝ Խոսրով սա պատասխանը կու տայ այս թղթոյն. «Քաջ արանց Խոսրով Հայոց արքայ, սպարապետի Գազաւոնի և ամենայն Նախարարաց մերոց ողջոյն։ Տեսու ուրախ լերուք, զի և մեք ողջ եմք, և ուրախացաք ընդ լուր ողջունի ձերոյ։ Եւ առաքեցաք ըստ խնդրոյ ձերոյ զայս պայման ուխտի։ Առաջին՝ չյիշել զյանցանս ձեր, զոր չունէաք առ յանցանս իսկ, այլ երախտաւորս զմիամտելն առ թագաւորին Արշակունւոյ զոր պաշտէիքն, զի և առ մեզ զնոյն յուսամք լինել։ Երկրորդ՝ դարձուցանել ի ձեզ զժառանգութիւնս ձեր, զոր ունիմք յարքունիս, բայց յայնմանէ զոր ումեք ումեք պարգևեցաք, և ոչ շրջին պարգևք թագաւորաց առանց վնասու. մանաւանդ զի ի դիւան հօրն մերոյ տեսաք Տապհոյ արքայից արքայի եմուտ. այլ փոխանակ ընդ այնր յարքունուստ լնումք զձերոյն պակասութիւնն։ Երրորդ՝ թափեմք զձեզ ի գործակալացն Յունաց, թէպէտ պատերազմաւ ընդ կայսեր, թէպէտ խաղաղութեամբ։ Եւ զքեզ, Գազաւոն, արիւն իմ և հարազատութիւն, ոչ ըստ վաղընջուց ազգականութեանն, այլ ըստ արդեանս, որ ի մօրէ քումմէ Արշանուշայ Արշակունւոյ, հանեալ զքեզ ի հայրենեաց քոց Կամսարականաց և ի մայրենիս քո յիմս առեալ ազգ՝ Արշակունի անուամբ պատուեցից» (Խոր. Գ. ԽԲ.)։ Գազաւոն, սաէ Խորենացին, կը գարձունէ Յունաց բաժնին բոլոր նախարարներն առ Խոսրով, և կը պատուի մեծ փառօք։ Խորենացին կը յաւելու նաև, թէ Սամէլ Մամիկոնեան, որ սպանած էր իւր հայրը Վարդան և մայրը Տաճատուրհի ուրացութեան համար, բռնելով Խոսրովայ թուղթը և նախարարաց թղթոյն պատճէնը՝ կ'երթայ առ Արկադ, և կը պատուի. իսկ թուղթերուն օրինակներն կը պահուին յարքունի դիւանն ի յիշատակ ապստամբութեանն Հայոց յառյապայ ժամանակս.—«Զայս տեսեալ Գազաւոնի՝ ընդ հուպ դարձուցանէ զընաւ նախարարսն առ Խոսրով, և բարեբաստիկ եղեալ քաջափառութեամբ՝ հանդիպի ամենայն խնդրոցն և խոստմանցն։ Բայց Սամելի Մամիկոնենի յինքն ըմբռնեալ զթուղթն Խոսրովու և զպատճէն թղթոյ նախարարացն՝ զատուցեալ ի նոցանէ գնաց առ կայսրն Արկադ։ Քանզի էր սպանեալ նորա զհայր իւր Վարդան յաղագս ուրացութեանն, և զմայր իւր Տաճատուրհի՝ երկնչելով ի Պարսից և ի քեռեաց իւրոց Արծրունեաց՝ ոչ իշխէր զատչել ի Յունաց։ Իսկ Արկադայ բարի արարեալ նմա՝ հրամայէ զհաւասար թղթոցն հեղլէն գրով ի դիւանի իւրում դնել, զի պահեսցին յիշատակք ազգաց ապստամբողաց, որ կայ մինչև ցայսօր» (Խոր. Անդ)։ Սամէլս այս էր Սամուէլն Մամիկոնեան, որ ըստ Բուզանդայ՝

գտնուեցաւ ի պատերազմին Մանուելի ընդ Մերուժանայ, ինչպէս արդէն տեսանք, և զոր յետ պատերազմին կանայք չփոթեցին ընդ Մերուժանայ, այս վերջնոյն գլուխն համարելով Սամուելի, քանզի Սամուէլ և Մերուժան նման էին յոյժ միմեանց։ Զխարդ և իցէ՝ Սամուէլ կամ Սամէլ չէր որդի Վարդանայ և Տաճատուհւոյ, այլ Վահանայ ուրացելոյ, որոյ կին էր Որմիզդուխտ քոյր Շապհոյ ըստ Բուզանդայ (Բուզ. Դ. Ծ.), և Սամուէլ սպանելով զերկոսին՝ փախաւ յերկիրն Խաղտեաց (Բուզ. Դ. ԾԹ.) և ոչ առ Յոյնս։ Բուզանդ կը յիշէ նաև զՎարդան եղբայր Վահանայ, բայց ոչ զկին նորա Տաճատուհի։ Որմիզդուխտ, ըստ Խորենացւոյն՝ էր կին Մերուժանայ (Խոր. Գ. ԼԶ)։ Դիցուք թէ պատմութիւն Խորենացւոյն է ճշմարիտ, այսինքն Որմիզդուխտ էր կին Մերուժանայ, և Տաճատուհի կին Վահանայ, որ սխալմամբ գրուած է Վարդան, և թէ Սամուէլ փախաւ առ Յոյնս ըստ Խորենացւոյն, և ոչ ի Խաղտիս ըստ Բուզանդայ. միթէ Արկադ ևս գրուած է սխալմամբ փոխանակ Թէոդոսի. քանզի եթէ ծնողասպանին Սամուելի թուղթերն առնլով փախչելն առ Յոյնս եղաւ առ Խոսրովաւ, այն է 387 կամ 388—(քանզի այս է Գազաւոնի և նախարարաց առ Խոսրով երթալուն թուականը),—այսինքն առ Շապհով Գ. (385—389)՝ Խոսրով էր առ Թէոդոսիւ. նա ոչ Խոսրով միայն, այլ և յաջորդին նորա Վռամշապհոյ առաջին տարիներն կը կշռին վերջին 4 կամ 5 ամացն Թէոդոսի։

Ըստ մեզ՝ հոս յայտնապէս կը սխալի մեր պատմութեան հայրը կամ աղբիւր նորա ուստի կ'առնու, շփոթելով ոչ միայն զՎարդան ընդ Վահանայ և զՏաճատուհի ընդ Որմիզդխտոյ՝ այլ և զԱրկադ ընդ Թէոդոսի։ Ցաւալին այն է, որ այս սխալմամբ, ըստ իւր վկայութեան՝ ծերունի պատմիչն մեր կասկածելի կ'ընէ իւր պատմութեան այս մասին ուրիշ կէտերն ևս, զորս յիշեցինք և պիտի յիշենք։ Բայց մենք արդէն յայտնեցինք մեր սակաւ վստահութիւնն առ Խորենացին, ըսինք ևս, թէ առ ի չգոյէ ուրիշ աղբեր՝ մեծ զգուշութեամբ կ'առնունք զԽորենացին իբրև աղբիւր յետ Բուզանդայ իբր ի հարկէ։ Գաթըրճեան ևս կը դնէ զՍամուէլ որդի Վարդանայ և Տաճատուհւոյ ըստ Խորենացւոյն, և ոչ Վահանայ և Որմիզդխտոյ ըստ Բուզանդայ, ինչպէս կ'երևի՝ ի պատիւ Խորենացւոյն, նախամեծար առնելով զսա քան զԲուզանդ, բայց չհասնիր իւր նպատակին, քանզի կ'ստիպուի ուղղել զքերթողահայրն, ճանչնալով զսխալ նորա, և դնել Թէոդոս փոխանակ Արկադայ (Գաթըրճ. Պատմ. տիեզ. հտ. Բ. էջ 521)։

Խորենացին կը դնէ զՍամուէլ ապաւինեալ առ Յոյնս (Թէոդոս

կամ Արկադ) և գտեալ ի Նոցանէ բարիս. սակայն չթուիր Հաւանական, թէ Թէոդոս, և ոչ իսկ Արկադ «բարի առնէին» մատնչի մը, որ ծնողասպան ևս էր։ Հաւանականագոյն է ուրեմն դնելն Բուզանդայ զՍոմէլ փախուցեալ ի Խաղտիս յետ սպանութեանն. իսկ առնուլ տանելն Սամելի զթուղթս Խոսրովու և Նախարարաց առ կայսր և վասն այսր գտանելն բարիս ի Նոցանէ՝ չէ Հաւանական, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Ո՜րչափ ուրախ ենք, որ մեր պատմութեան մէջ Նախամեծար ըրինք Խորենացւոյն զԲուզանդ իբրև ժամանակակից, ինչպէս էր իսկ արժան ըստ օրինաց անաչառ քննադատութեան։

Նաև զերթալն Գազաւոնի և Ցունաց բաժնին Նախարարաց, որ էին ի բնէ Պարսից բաժնէն, առ Խոսրով՝ չէր կրնար, ինչպէս կը կարծէ Խորենացին, ապստամբութիւն համարել Թէոդոս կամ Արկադ, որ զիւր բաժինն ևս, ըստ Խորենացւոյն, յանձնեց Խոսրովու, պարագայ մը՝ որ ըստ մեզ չէ Հաւանական։ Ասացաք թէ չէ Հաւանական, քանզի գիտեմք այլուստ արտաքին վկայութենէ, թէ իսկ և իսկ զկնի մահուն Արշակայ (386) Ցունաց բաժինը եղաւ Նահանգ Հռոմէական, այսինքն իշխանութիւն երկրին յանձնուեցաւ կոմսի, կամ զինուորական կուսակալի, թէպէտ հայ Նախարարներէն չառնուեցաւ ինքնօրէնութիւնն, զոր ի վաղուց ունէին իրենց երկիրներուն վրայ. միայն մին ի Նոցանէ ունէր գլխաւորութիւն իմն ի վերայ այլոց, այնպէս որ կայսրն առ Նա կ'ուղղէր իւր Հրամաններն առ Նախարարս։ Այսպէս ըստ Թէոդոսեան մատենին (գիրք ԺԲ. Տ. ԺԳ. Օր. 6) Թէոդոս արդէն 387-ին այս կարգադրութեան Համեմատ կը գրէ Գադդան կամ Գազանաս (թերևս Գազաւոն) Ծոփաց Նախարարն, որ ունէր գլխաւորութիւնը. «Գադդանայ, Նախարարի Ծոփաց աշխարհին։ Սահմանեմք զոսկին պսակական տալ այսրէն յետս և դարձուցանել առ Նոսա՝ յորոց ոչ ըստ օրինի թուի հանեալ, զի ըստ հին սովորութեան օրինակի՝ ամենայն Նախարարք ի սերոյ հպատակութեանն, որ պարտի հռոմէական տէրութեանն՝ պսակ յւրեանց ի սեպհական ընչից արասցեն, մատուցանել փառաւորութեամբ մերում լուսաւորութեանս։ Տուեալ ԺԸ. կաղանդացն Ցուլեայ, ի Կոստանդնուպոլիս, ի Վաղենտիանեայ Աւգոստեայ՝ երրորդ անգամ, և յԵւտրոպեայ հիւպատութեանն» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Բ. էջ 520, ծան. 2)։ Չայս կը թուի ակնարկել Նոյն իսկ Խորենացին, որ ասէ յայտնապէս, թէ «Այնուհետև (զկնի մահուանն Արշակայ) ոչ ևս կացուցին Ցոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդէր Նախարարացն այնր կողման քաջն Գազաւոն, և աշխարհին իւրեանց մասինն կացուցին Ցոյնք Կոմէսս իշ-

խանս»։ Կամի ասել, թէ Գազաւոն ունէր գլխաւորութիւն իմն այն բաժնին նախարարաց վրայ, իսկ երկրին քաղաքական վարչութիւնն յանձնուեցաւ կոմսի, այսինքն զինուորական իշխանի։ Թէոդոսի յիշեալ օրէնքն Յունաց բաժնին համար չփոխուեցաւ երբէք, ուստի և չենք կրնար իբրև պատմական ընդունել՝ ինչ որ Խորենացին կը պատմէ ի սկզբան ԽԹ. գլխոյն, թէ Խոսրով խնդրեց յԱրկադեայ և առաւ Պարսից բաժնին վրայ նաև Յունաց բաժնին իշխանութիւնը.— «Իբրև տիրեաց Խոսրով բոլոր ամենայն նախարարացն Հայոց որում ցանկայրն՝ յղէ առ Արկադ և խնդրէ ի նմանէ հաւատալ յինքն զմասն Յունաց որ ի Հայս, զոր չէն կալեալ հարկեսցեն նմա անսխալ, որպէս նորուն գործակալացն։ Եւ կասկածեալ Արկադայ ի միաբանութենէ նախարարացն Հայոց, թէ միաբանութեամբ հանիցեն ի նմանէ և տացեն ի Պարսս զբաժինն զայն՝ կատարէ զխնդիրս Խոսրովայ»։ Չէ պարտ մոռանալ, թէ Խոսրով չէր առ Արկադեաւ, ուստի և չէր կրնար ունենալ ընդ նմա գործ։ Խոսրով արկաւ իշխանութենէն 391-ին, մինչ Արկադ առաւ զկայսրութիւնն 395-ին, որ է ամ մահուան մեծին Թէոդոսի։ Այս դժուարութեանց նայելով՝ կը թուի մեզ թէ ի պատմութեան աստ Խորենացւոյն գոյ սխալ կամ շփոթութիւն։ Իսկ գալով առ Սամուէլ՝ Բուզանդայ պատմութիւնն կը թուի մեզ աւելի պարզ և հաւանականագոյն, այսինքն թէ Սամուէլ առ մոլի նախանձաւորութեան կրօնից, սպանեալ զհայր իւր ուրացեալ և զմայրն մոգակրօնիկ՝ փախստեայ անկաւ ի Խաղտիս. իսկ ըմբռնումն թղթոցն Խոսրովու և նախարարաց և տարուիլն առ կայսր, և հաւասարի նոցա դրուիլն յարքունական դիւանի հելլէն գրով ի յիշատակ ապստամբ ազգին Հայոց, եթէ է ճշմարիտ՝ եղած է իբր 387-ին առ Թէոդոսիւ, առ որով էր Խոսրով, և ոչ տասն ամօք յետոյ առ Արկադաւ, իբր 397-ին, մինչ չկար Խոսրով։ Ահա միւս ևս նշան սխալ ժամանակագրութեան Խորենացւոյն, որ իբր տասն ամօք յետկոյս կը խախտէ դիպուց ժամանակներն, ինչպէս արդէն ըսուեցաւ։

**10.** Հոս հարկ է մեզ խօսել զկաթողիկոսութենէն Սահակայ։ Արդէն տեսանք ի Բուզանդայ, թէ ինչպէս Պապ յետ մահուն Ներսիսի կարգեց կաթողիկոս զՅուսիկ ոմն ի զաւակէն Աղբիանոսի առանց հրամանի եպիսկոպոսապետին Կեսարու, և այս պատճառաւ ոչ սակաւ խռովութիւն ծագեցաւ ի մէջ Յունաց և Հայոց։ ՋՅուսիկանէ ասէ Բուզանդ, թէ էր այր լաւ, այլ թոյլ.— «Սա էր, ասէ, քրիստոնեայ, բայց համարձակութեամբ յանդիմանութեամբ ինչ ընդ ումեք չիշխէր բարբառել, զի երկչոտ էր և հաւան, և ըստ կամաց թագաւորին միայն ունէր զպատիւն, և կայր ի լռութեան և

ի հանդարտութեան զամենայն աւուրս կենաց իւրոց» (Բուզ. Ե. ԻԹ.)։ Յուսկան յաջորդեց, ըստ Բուզանդայ, Զաւէն, նոյնպէս ի զաւակէն Աղբիանոսի, եպիսկոպոս Մանազկերտոյ, որ էր վիճակ Աղբիանոսի, շնորհեալ նմա ի Խոսրովէ Կոտակայ (Բուզ. Գ. Դ.)։ ԶԶաւինայ ասէ Բուզանդ, թէ էր այր խիստ, որկորուստ և ագահ, փոխեց կղերականաց հանդերձն ի ձև զինուորական, և ինքն ևս կ'զգենուր ճամկաւոր հանդերձներ, սամուրենիս, կնգմենիս, և այնպէս կ'ելլէր ի բեմ.—«Եւ էր Զաւէնն այս անուանի, զաւակ Աղբիանոս եպիսկոպոսի ի գեղջէ Մանազկերտոյ. էր սա բարոյիւք չարաչար խիստ և նախանձոտ։ Բայց սակայն կրօնս մի (կարգ, կանոն) եդ յիւրում ժամանակի, զի ամենայն քահանայից ուսոյց տանել հանդերձ զինուորաց։ Թողին զկրօն առաքելական եկեղեցեացն, սկսան գնալ ըստ իւրեանց մտաց, զի ոչ ըստ կրօնիցն ագանէին քահանայքն զպճղնաւորն, որպէս օրէն էր ի բնէ, այլ սկսան զխոտորկտուրսն ի վերայ ծնգացն ունել։ Եւ զարդարէին զհանդերձս իւրեանց պէսպէս նարօտօք, և սիգային որպէս ոչ վայել էր. և զմորթ մեռելոտիս գազանացն քահանայքն անխտիր ագանէին, որ ոչ վայել էր։ Եւ ինքն Զաւէնն ածինեալս և զտապակեալս զժապաւինեալս նարօտօք ագանէր, զսամուրենիս և զկնգմենիս և զգայլենիս ագանէր, և (քահանայքն) աղուեսենիս զանձամբ արկեալ՝ անխտիր ի բեմ ելեալ նստէին։ Որկորստութեամբ, ագահութեամբ, անառակութեամբ կայր Զաւէն զամենայն աւուրս կենաց իւրոց» (Բուզ. Զ. Բ.)։ Սմա յաջորդեց, ըստ Բուզանդայ, Շահակ ոմն Կորճեայ, որպէս ասէ. «Ապա Շահակ Կորճեայ եկաց գլուխ եպիսկոպոսաց փոխանակ Զաւինայ յետ մահու նորա։ Եւ էր սա այր քրիստոնեայ, բայց ոչինչ զչարեցաւ ընդ կարգս Զաւինայ, զոր եդեալն էր նորա՝ փոխել» (Բուզ. Զ. Գ.)։ Շահակայ յաջորդեց Ասպուրակ կամ Ասպուրակէս առ Խոսրովաւ վերջնով, դարձեալ ի զաւակէն Աղբիանոսի.—«Ապա յետ մահուն Շահակայ եպիսկոպոսի, ասէ Բուզանդ, եկաց գլուխ եպիսկոպոսաց Ասպուրակ ոմն ի զաւակէ Աղբիանոսի եպիսկոպոսի, այր քրիստոնէամիտ, աստուածապաշտ, արդար, և առաջնորդեաց դրանն Խոսրովու. բայց միայն վասն կրօնիցն հանդերձոյն զեդեալ կարգն Զաւինայ գնայրին» (Բուզ. Զ. Դ.)։ Եւ ի ԺԵ. գլուխ նոյն դպրութեան դարձեալ խօսի զնմանէ այսպէս. «Եւ էր, ասէ, գլխաւոր եպիսկոպոսաց Հայոց Ասպուրակ, այր սուրբ և բարեպաշտօն, երկիւղած յԱստուծոյ և ի մարդկանէ։ Բայց ոչինչ կարէր յանդիմանութեամբ խօսել ընդ ումեք, այլ ինքն ի լռութեան էր և ի համեստութեան, ի զգաստութեան, ի պարկեշտութեան, ի պահս և յաղօթս. յամենայն ժամ աղաչէր զԱստուած, բայց ի հանդերձն

զգենլոյ՝ ըստ կրօնիցն Զաւէնայ գնայր նա. ազանէր զամզայեալս և ժապաւինեալս։ Բայց էր սա այր քաղցր և խոնարհ, բարերար և մարդասէր զամենայն աւուրս կենաց իւրոց։ Խորենացին չյիշեր զՑուսիկ, այն զոր ըստ Բուզանդայ Պապ դրաւ կաթողիկոս փոխանակ Ներսէսի, այլ կու տայ Պապայ զկնի Ներսէսի գնել յաթոռ կաթողիկոսութեան զՇահակ, զորմէ ասէ միայն, «ոչ հեռի ի գովութենէ, զոր կացոյց (Պապ) փոխանակ Ներսէսի, առանց մեծ արքեպիսկոպոսին Կեսարու» (Խոր. Գ. ԼԹ.)։ Խորենացին գիտէ նաև զԶաւէն ի կարգի կաթողիկոսաց, բայց զկնի Շահակայ, (մինչ ըստ Բուզանդայ՝ Շահակայ նախորդն է Զաւէն), զոր յիշելով միայն կ'անցնի—«Բայց յերկրորդ ամի Վարազդատայ եկաց եպիսկոպոսապետ Հայոց Զաւէն, ի նոյն ազգականութենէ Աղբիանու»,—առանց յաւելլոյ ինչ զվարուց և զնորաձևութենէ նորա։ Ըստ Խորենացւոյն՝ Շահակ ևս էր ի զաւակէ Աղբիանոսի, մինչ ի Բուզանդայ կը կոչուի «Կորճեայ»։ Իսկ զԱսպուրակէսէ, որ ըստ Խորենացւոյն է յաջորդ Զաւէնայ՝ Խորենացին ասէ լոկ, թէ «Եկաց յեպիսկոպոսութիւն Հայոց», և թէ էր «ազգական Շահակայ և Զաւէնայ» (Խոր. Գ. ԽԱ.)։

**11.** Զյաջորդն Ասպուրակէսի, զմեծն Սահակ չգիտեր Բուզանդ, և ոչ իսկ կը յիշէ զնա ի վախճանի Զ. դպրութեան։ Բայց Բուզանդ, ինչպէս կարծեմք՝ վախճանած էր յառաջ քան զկաթողիկոսութիւնն Սահակայ, այն է յառաջ քան զամն 390, կամ իբր 3 կամ 4 ամօք յառաջ քան զմահն Արշակայ Գ, առ որ հասուցանելով կը դադարեցունէ զպատմութիւն իւր, ուստի և հաւանականապէս չգիտեր Արշակայ մահը, յեա որոյ կը թուի սկսեալ համբաւն առաքինութեան և իմաստութեան մանուկ յաջորդին Ասպուրակէսի։ Եւ եթէ նոյն համարինք ընդ պատմագրին «Փաւստեայ Բուզանդեայ» զՓաւստոսն, յիշեալ ի Ե. գլուխն Զ. դպրութեան Բուզանդայ—(և այս է արդարև, ինչպէս տեսանք այլուր, հաւանական ի նոյնութենէ և՛ անուան և՛ ազգին երկոցունց)—կը գտնենք, թէ այս Փաւստոսի կենդանութեան ժամանակը չ'անցաւ այսր քան զժամանակ կրկնակ թագաւորութեանն, այսինքն քան զժամանակն՝ յորում Արշակ և Խոսրով կը թագաւորէին միևնոյն ժամանակ, իւրաքանչիւր ուրոյն յիւրում բաժնին։ Արդ այս կրկնակ թագաւորութիւն տևեց մինչև 386 կամ 387, կամ մինչև ի մահն Արշակայ։ Աչա Բուզանդայ յիշեալ գլուխն. «Էր առ այնմ ժամանակաւ Փաւստոս եպիսկոպոս. սա ի ժամանակս Ներսեսի եպիսկոպոսապետին էր ի տան Նորին իբրև թելակալ։ Քանզի էին ի Ներքնի հայրապետին ի տան իւրում ընդ նորա ձեռամբ երկոտասան եպիսկոպոսք, աթոռակիցք իւր, գործակիցք և խորհրդակիցք, թող զայ-

լոց գաւառաց ամենայն եպիսկոպոսեանն որ ընդ նովաւ։ Այլ երկոքեան նոքա (Փաւստոս և Զորթ) էին յայնց երկոտասանիցն, և էին ի տեսչութիւն աղքատանոցացն հաւատացեալք, և յամենայնի էին հաւատարիմք նորա ի ժամանակս նորա, և յամս Խոսրովու և Արշակայ երկուց թագաւորացն բաժանաւորացն դեռ ևս կային նոքա կենդանիք» (Բուզ. Զ. Ե.)։ Այս դլուխն է թերևս տեղեկութիւնն, զոր Բուզանդ կը խոստանայ տալ զանձնէ ի վախճանի ցանկին գլխոց Զ. դպրութեան։ Ապաքէն անհնար էր Բուզանդայ, որ այնպէս նախանձախնդիր էր յիշել զշառաւիղս տանն Լուսաւորչին՝ չյիշել Ներսիսի որդին, եթէ սա սկսած էր գիւր փառաւոր ընթացսն առ նովաւ։ Նաև չէ անհաւանական, թէ Սահակ կը գտնուէր յայնժամ ի Յոյնս, ուր կեցաւ նա շատ տարիներ ի հրահանգս։ Ապա առաջին յիշատակիչ կաթողիկոսութեանն Սահակայ է Խորենացին, որ մեր պատմութեան այս նշանաւոր կէտը կը պատմէ այսպէս. «Յետ այսր վախճանեալ եպիսկոպոսապետն Ասպուրակէս՝ ի տեղի նորա յաջորդէ Խոսրով զՍահակ որդի մեծին Ներսիսի, որդւոյ Աթանագենի, որդւոյ Յուսկան, որդւոյ Վրթանիսի, որդւոյ սրբոյն Գրիգորի» (Խոր. Գ. ԽԹ.)։ Խոսրովայ ընտրելն զՍահակ ի կաթողիկոսութիւն՝ չէր վասն սերելոյն նորա միայն ի Լուսաւորչէն, այլ ունէր նաև հաւանականապէս ուրիշ, և քաղաքական պատճառ։ Խոսրով որ սկսած էր մտել ի Յոյնս՝ թերևս նպաստաւոր գտաւ իւր խորհրդոյն զՍահակ, սնեալն յունական հրահանգօք և ոգւով, ուստի և առանց հարցանելոյ արքայից արքայի՝ կարգեց զՍահակ կաթողիկոս։ Այս պատճառաւ, և մանաւանդ ի պատճառս մտման նորա ի Յոյնս՝ Շապուհ Բ. ըստ Խորենացւոյն, բայց ըստ ճշգրիտ ժամանակագրութեան՝ Շապուհ Գ. կամ մանաւանդ Վռամ Գ, կը գրէ յանդիմանութիւն առ Խոսրով, և կ'ընդունի ի նմանէ խիստ պատասխան։ Խոսրով վերցունելով դիմակը՝ յայտնապէս կը խնդրէ յԱրկադեայ (395—408), յաջորդէն Թէոդոսի, օգնել նմա զօրօք, խոստանալով դարձունել ի նա զքովանդակ Հայս։ Վռամ (ըստ Խորենացւոյն Շապուհ Բ.) իմանալով զայս ի մատնութենէ նախարարաց Հայոց՝ կը ղրկէ զորդին իւր (Յազկերտ Ա, ըստ Խորենացւոյն Արտաշիր) ընկենուլ զԽոսրով տէրութենէն։ Ի հրաժարել Արկադեայ օգնել՝ Խոսրով կ'ստիպուի երթալ ընդ Յազկերտի ի Պարսս, և կը դրուի իբրև պատանդ յԱնյուշ բերդն։ Խոսրովայ հետ իբրև կասկածելի կը տարուի նաև Գազաւոն, որոյ տունը կ'առնուի յարքունիս, ինչպէս նաև եղբօր նորա Շաւարշայ և Պարգևայ Ամատունւոյ, որ զօրօք զհետ պնդած էին Յազկերտի՝ ազատել զԽոսրով, և չյաջողելով կ'ստիպուին կռուել։ Ոմանք կ'սպան-

ուին, այլք բռնուելով կը տարուին գերի, և մորթուելով և լցուելով իբրև տիկ՝ կը դրուին միշտ յանդիման Խոսրովու ի բերդին։

**12.** Յազկերտ յառաջ քան զմեկնելն կը թագաւորեցունէ Հայոց զեղբայրն Խոսրովու, փոխելով զանուն նորա — առաջին անունն չէ յայտ — յանուն հօր իւրոյ և հաւուն՝ Վռամշապուհ, զՍահակ և զնախարարս կարգեալս ի Խոսրովայ կը խափանէ իրենց պատուէն, նոյնպէս զՑոյնս որոց Խոսրով տուած էր պաշտօն.—«Բայց Շապուհ (իմա Վռամ Գ.) էր ցասմամբ ընդ Խոսրովայ ի բարեկամանալն (սորա) ընդ Արկադեայ (իմա Թէոդոսի, քանզի Արկադ յետոյ է քան զգերութիւնն Խոսրովու) անձամբ, և յանհրաման կարգել յեպիսկոպոսութիւն զմեծն Սահակ, վասնորոյ յղեաց մեղադրութիւն հանդերձ սպառնալեօք. ըմբոստացաւ Խոսրով, և խրոխտով վեսական պատասխանեաց, արձակեաց զպատգամաբերսն անարգանօք։ Եւ իսկոյն խօսեցաւ ընդ Արկադեայ (Թէոդոսի), զի լուծեալ զհաշտութիւնն ընդ Շապհոյ (Վռամայ)՝ օգնեսցէ նմա զօրու, և սա դարձուսցէ առ նա զբոլոր աշխարհս։ Այլ Շապուհ (Վռամ Գ.) ի հրապուրելոյ գուշակութեան նահապետացս մերոց, նոյնհետայն առաքէ զորդի իւր զԱրտաշիր (իմա Յազկերտ) զօրու ծանու ի Հայս։ Եւ ի հրաժարել Արկադայ (Թէոդոսի) ի կուսակցելոյն Խոսրովայ, և ոչ զօրք յօտար ազգաց գտեալ ի սատարութիւն՝ անկարացեալ ընդդիմանալ կամ խուսափել ի նմանէ՝ չոգաւ առ նա։ Այլ Արտաշրի (Յազկերտ) ընկեցեալ զնա ի տէրութենէն, փոխանակ կացուցանելով զՎռամշապուհ եղբայր նորին՝ ոչ զմեծն Սահակ և ոչ զօրք ի նախարարացն կարգելոցն ի Խոսրովայ եթող, այլ վրդովեաց ի պատուոյ իւրաքանչիւր. նա և հրամայեաց և ընդ Ցոյնս զնոյն կարգ ունել։ Եւ թողեալ գունդ ստուար՝ ինքն ի Տիզբոն փութայ հասանել, ի ծնրութենէ հօրն ակն ածելով.—(այս, ինչպէս նաև ասելն յետոյ—«թագաւորեաց ամս հինգ»՝ կը յարմարին որդւոյն Շապհոյ Բ-ի ծերացելոյ, այն է Արտաշրի Բ, որ արդարև թագաւորեաց չորս կամ հինգ տարի, 380—384, բայց ժամանակք սոցա չեն յարմարիր ժամանակին զորմէ բանքս են, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև)—ընդ իւր ունելով զԽոսրով՝ դնել յԱնուշն կոչեցեալ բերդի. որոյ թագաւորեալ ամս հինգ։ Ընդ նմա տարաւ զԳազաւոն, կասկածեալ յառնն քաջութենէ, և զառն նորա հրամայէ ունել յարքունիս, նոյնպէս և զեղբօր նորա Շաւարշայ և զՊարգևայ Ամատունւոյ։ Քանզի նոքա երկոքեան հանդերձ զինուորօք իւրեանց եւթն հարիւրովք նկատեալ որսացան զյաջողութիւն ժամու ի ճանապարհի կարաւանին՝ զերծուցանել զարքայն իւրեանց Խոսրով, և ոչ աջողեցան ի պարտուանդելոյ ոտից նորա

ի շղթայս։ Եւ հզօր մարտի եղելոյ՝ սպանան Շաւարշ և Մանուէլ որդի Պարգևայ, և բազումք ընդ նոսա. իսկ Պարգև ի կալանս ըմբռնեալ՝ ածաւ առաջի Արտաշրի (Վռամայ), և տիկ տեսակ գործեալ ուռուցմամբ՝ հրամայեաց դնել յանդիման Խոսրովայ հանապազ» (Խոր. Գ. Ծ.)։ Հոս ևս կարևոր է դիտել, թէ ժամանակագրութիւն Խորենացւոյն չէ ուղիղ։ Թագաւորք Պարսից, զորս Խորենացին կը յիշէ յանուանէ, ինչպէս Շապուհ Բ. և Արտաշիր Բ՝ չեն կշռիր ժամանակի դիպացն, զորս կը դնէ Խորենացին դիպեալ առ նոքօք—Շապհոյ Բ-ի (310—380) և որդւոյ նորա Արտաշրի Բ-ի հնգամեայ ժամանակն (380—384) յառաջ են քան Խոսրովայ թագաւորութեան տարին, որ է 385,—և ոչ մանաւանդ ժամանակին Արկադեայ, որ նստաւ 395-ին, այն է առ Վռամաւ Գ։ Ապա Խորենացւոյն Շապհով և Արտաշրիւ պարտ է իմանալ զՎռամ Գ. (389—399) և զՅազկերտ Ա. (399—420), ինչպէս նշանակեցաւ ի մէնջ։

**13.** Սահակաւ դադրած էր արու տոհմն ի զաւակէ Լուսաւորչին. քանզի Սահակ, վերջին արու մնացորդ Գրիգորեան տան՝ չունեցաւ որդի, այլ միայն դուստր մի միամօր Սահականոյշ անուն, զոր ամուսնացոյց Սահակ Համազասպայ ումեմն Մամիկոնենի։ Յետ մահուն Սահակայ ասպետի, սպարապետին Խոսրովու՝ Սահակ կը խնդրէր ի Խոսրովայ, և յետ կապանաց նորա ի յաջորդէն և յեղբօրէ նորա Վռամշապհոյ (391—414)՝ տալ զսպարապետութիւնն փեսային իւրում Համազասպայ։ Վռամշապուհ չհամարձակելով առնել զայս առանց հրամանի Վռամայ, յիշելով զարկածս եղբօրն այսպիսի պատճառաւ՝ կը ղրկէ զՍահակ յանձնարարական թղթով առ թագաւորն, որ պատուով ընդունելով զՍահակ՝ կը շնորհէ նմա ինչ որ կը խնդրէր. սպարապետութիւնը կը տրուի Համազասպայ նոր կալուածներով, յանցաւոր համարուած ցեղերուն կը շնորհուի ներումն և կը հրամայուի յետս դարձունել նոցա ստացուածներն, որ յարքունիս գրաւեալ էին, բաց յաստիճանէ պատուոյն նոցա, որ կ՚իջնէ կրտսերագոյն նախարարութեանց կարգը. միայն Համազասպայ տոհմը կը բարձրանայ ի հինգերորդ աստիճան ի կարգի նախարարաց։ Այս ամենայն հրամանք թագաւորին իբրև օրէնք կը գրուին յարքունական դիւանին.—«Ուրեք ոմանք երևելիք առաջինք ի նախարարացն և ի վերադիտաց աշխարհիս, լուսաւորութեան պատճառք, որդեծնութեամբ իջեալ ի մեծն Սահակ, դադարումն եղև ուստերաց նորա, ունելով դուստր մի Սահականոյշ կոչեցեալ, որ տուաւ յամուսնութիւն Համազասպայ Մամիկոնենի։ Եւ ի մեռանել քաջ սպարապետին Հայոց Սահակայ ասպետի՝ ի տեղի նորա զնա (զՀամազասպ) աղաչեաց (Սահակ) կարգել Խոս-

բովայ արքային, և զկնի կապանաց՝ եղբօր նորա Վռամշապհոյ։ Այլ սա հրաժարէր առանց արքայից արքային առնել զայս. յիշելով թէ սակս այսպիսի իրաց կրեաց վիշտս եղբայր նորին Խոսրով։ Վասն որոյ առեալ (Սահակայ) ի սմանէ (ի Վռամշապհոյ) թուղթս ի թախանձելոյ դստերն՝ ինքնին չոգաւ առ Արտաշիր (Վռամ) Պարսից արքայ։ Եւ մեծարի ի նմանէ յոյժ. նախ վասն քաջատոհմիկ ազգին Պահլաւկաց—(Խորենացին ըստ աւանդութեան՝ գիտէ զՍահակ, իբրև սերունդ Անակայ՝ Պարթև կամ Պահլաւ).—դարձեալ և զի առաջի անհաւատից արգոյ և պատուական ցուցանէ Աստուած զծառայս իւր։ Որոյ զբնաւն կատարեալ խնդիրս (Վռամ), նախ վասն փեսայի նորա Համազասպայ, դարձեալ և վասն մնացելոցն մեղուցեալ նմա ազգացն Կամսարական և Ամատունի, որ սուզեալ ղօղեալ էին յանյայտ տեղիս. վասնորոյ մաղթեաց գթալ իբր յաստուածային հրամանէ՝ ոչ բառնալ որդւոց զյանցանս հարց, մանաւանդ զի և հարք որք մեղանն՝ նոքին իսկ սակս այնր և մեռան։ Որոց մնացելոցն պարգևեալ զկեալն՝ հրամայեաց զտուն երկաքանչիւրոցն զկալեալսն յարքունիս դարձուցանել ի նոսա. բայց միայն ի գահ հայրենի ոչ հաստատել, այլ ի խոնարհ քան զբազումս մատուցանել նախարարս, ի կարգ կրտսերագունից պատուատել։ Իսկ զազգն Համազասպայ, որ է տոհմ Մամիկոնեան՝ ի վեր մատուցանել, զի կարգեսցին ունել զհինգերորդ գահ նախարարացն Հայոց, և ի դիւանի իւրում գրել» (Խոր. Գ. ԾԱ.)։

**14.** Խորենացին կու տայ հոս հին ինչ պարսկական օրինաց վրայ կարճառօտ տեղեկութիւն, որոյ համառօտութենէն և մթութենէն սաչափ միայն կ'իմացուի, թէ ի նստել նոր թագաւորի յաթոռն՝ իսկոյն դահեկանք կը փոխուէին, և կը դրոշմուէր նոր դահեկան ի պատկեր նորոյ թագաւորին։ Իսկ դիւանն, այսինքն մատեանն յիշատակաց չէր փոխուէր, այլ կը պահուէր հինն, ուր կ'արձանագրուէին օրէնք և հրամանք նոր թագաւորին յանուն այս վերջնոյն, մինչև առնէր սա աշխարհագիր, և յայնժամ կը փոխուէր դիւանը։ Ուստի արտօնութիւնք որ տրուեցան Մամիկոնեանց, և միւս երկու ցեղերուն շնորհուած ներումն՝ արձանագրուեցան ի դիւանի նախորդ թագաւորին Շապհոյ Գ. կամ թերևս Շապհոյ Բ. յանուն Վռամայ, քանզի դեռ եղած չէր նոր աշխարհագիր։ Թէ ինչ նպատակաւ կը յիշէ Խորենացին այս օրէնքը՝ չէ յայտ. հարկ է յիշել միայն, թէ այս եղաւ ոչ յաւուրս Արտաշրի Բ-ի և ոչ յաջորդին նորա Շապհոյ Գ-ի, այլ Վռամայ Գ-ի, առ որով թագաւորեց Վռամշապուհ, որոյ ժամանակ եղան յիշեալ դէպք, այսինքն յետ 391-ին, ուր Արտաշիր Բ. և Շապուհ Գ. յա-

ռաջնագոյն են քան զՎռամշապուհ։ Ահա Խորենացւոյն յիշեալ հատուածը. «Զերկուս զայս այսպէս պահէին սովորաբար. զի յորժամ նստէր արքայ նոր՝ նոյնժամայն փոխէին զդրամ գտեալ ի գանձս արքունի, զնորայն տպաւորեալ պատկեր. և զգիր դիւանին յայլ փոխեալ նորա անուամբ, սուղ ինչ զանազանեալ, ոչ բառնալով զհինն։ Իսկ եթէ յամիցէ ի տէրութեանն ամս բազումս և արասցէ աշխարհագիր նոր՝ թողուին զայն որ ի հնոյն փոխեցաւ, զի միայն ի նորոյն վերագրեսցի անուն։ Արդ Արտաշիր ոչ ժամանէ ի կարճութենէ աւուրցն այլ առնել աշխարհագիր. յայնմ որ յառաջնոյն փոխեաց՝ իւր անուամբն հրամայեաց գրել զայդ ամենայն» (Խոր. Գ. ԾԱ.)։ Արդարև Արտաշրի Բ-ի և Շապհոյ Գ-ի թագաւորութիւնն եղև կարճ. բայց հոս ևս կը սխալի Խորենացին, քանզի յիշեալ դէպք, այսինքն երթալն Սահակայ ի Պարսս և խնդրել ներումն վասն յանցաւոր նախարարաց՝ եղաւ առ Վռամշապհով, այսինքն յետ 391-ին, ուստի և առ Վռամաւ Դ, 389—400։

**15.** Ըստ Խորենացւոյն՝ արքայն Պարսից (Վռամ Դ.) հանդերձ սպարապետութեամբն, որում կը ցանկար Համազասպ՝ կը շնորհէ նմա նաև գեղեր և դաստակերտներ, և կատարումը կը յանձնէ Վռամշապհոյ առանձին հրովարտակաւ կամ թղթով, զոր կու տայ մեզ Խորենացին իբրև բուն պատճէն այն թղթոյն. «Հրամայեաց տալ գահու և պատուոյ (գահ և պատիւ)՝ հանդերձ իշխանութեամբ գիւղից և դաստակերտաց Համազասպայ, որում ցանկայրն սպարապետութեան Հայոց, հրովարտակ առ Վռամշապուհ մեր թագաւոր գրեալ զայս. Մազդեզանց քաջ, Արտաշիր արքայից արքայ. առ եղբայր Վռամշապուհ թագաւոր Հայոց ողջոյն շատ։ Ընկալայ զգրեալսս քո, որ ինչ վասն եպիսկոպոսի Սա ակայ, և յիշեցի զերախտիս նախնեաց դորա, որ էին նահապետք Սուրենեան Պահլաւոյ, և կամաւ յանձն առին զտէրութիւն իմոյ նախնւոյն և համանուանն Արտաշրի. և այնչափ սիրեալ զնա քան զիւրեանց ազգայինսն՝ մինչ զի ոչ շատացան միայն ի Պարսից աշխարհիս մարտնչել ընդ նոսա, այլև ի ձեռն եկեալ նորին տղագաւ՝ սպանին զԽոսրով զքո նախնին, և զտոյժս սպանութեանն իւրեանց հատուցին մահուամբ։ Իսկ որդի սպանողին Գրիգոր, զկեանս և զթագաւորութիւն կորուսեալ հիւանդութեամբ Տրդատայ՝ վերստին ետ իւրով բժշկութեամբ, և աւաւել առ ձեզ երախտաւոր։ Վասն որոյ զորդիացեալդ դորա զՀամազասպ կացուսցես ի վերայ զօրացդ սպարապետ՝ մեր հրամանաւ, և ազգի դորա տացես զգահ հինգերորդ պատուոյ նախարարացդ, և զգիւղս և զդաստակերտս, զոր

տուեալ է Նախնեացն քոց հարց զորա՝ կալցին զոքա։ Սոյնպէս և զտունս մնասակարաց ազգացդ զոր կալաք յորքունիս՝ թողցես ի բաց, աներկիւղաբար ժառանգել նոցին մնացորդաց. բայց զոհուց հայրենականաց պատուոյ մի արասցես արժանի. զի և մեք ի մերում դիւանի հրամայեցաք գրել։ Ողջ լեր» (Խոր. Գ. ԾԱ.)։ Որպէս այլուր ասացաւ՝ Խորենացին ի հաստատութիւն պատմութեան իւրոյ կը սիրէ բերել թուղթեր և նամակներ, յորոց գէթ ոմանց վաւերականութիւնը կասկածելի է։ Սոցա կարգէն կը թուի այս թուղթըն առ Վռամշապուհ։ Նախ՝ ըստ նամակին՝ գրողն է Արտաշիր Բ, քանզի համանունն իւր կը կոչէ զԱրտաշիր Ա.—«Կամաւ յանձն առին զտէրութիւն իմոյ նախնւոյն և համանուանն Արտաշրի». բայց Արտաշիր Բ. յառաջ է քան զՎռամշապուհ, ուստի և չէր կրնար գրել առ նա թուղթ։ Երկրորդ՝ նամակը կը յիշէ զսպանումն Խոսրովու, հօր Տրդատայ, յԱնակայ Պահլաւէ, Տրդատայ արկածը, և Հայոց դարձն ի ձեռն Գրիգորի։ Պարսիկ թագաւոր մը կրնար գիտնալ զայսոսիկ և յիշել, թէպէտև են վէպ, բայց ոչ այնպիսի բանիւք որ կը վայելեն ի բերան քրիստոնէի, և ոչ հեթանոս թագաւորի թշնամւոյ քրիստոնէութեան, որպիսի էր Արտաշիր՝ զսպանողն Խոսրովու, զքարեկամս Սասանեանց՝ համարել չարագործս—«հատուցին մահուամբ զտոյժս սպանութեան իւրեանց»,—զԳրիգոր կոչել բուժիչ Տրդատայ հրաշիւք—«զկեանս և զթագաւորութիւն վերստին ետ Տրդատայ իւրով բժշկութեամբ»,—և երախտաւոր Հայոց, դարձուցանելուն համար զնոսա ի քրիստոնէութիւն—«առ ձեզ եղև երախտաւոր»,—և ի վարձ այս երախտեացն նորա շնորհել զաւակի նորա Սահակայ խնդիրը—«վասն որոյ», ի վարձ երախտեացն Գրիգորի, «զորդիացեալդ զորա զՀամազասպ կացուսցես», և այլն։ Հաւանական է սակայն, թէ Վռամ հրաման տուաւ հրովարտակաւ կամ պատգամաւորաւ Վռամշապհոյ կատարել եղած շնորհումներն։ «Բայց յորժամ եկն մեծն Սահակ, ասէ Խորենացին, և զամենայն պարգևեալսն յԱրտաշրէ հաստատեաց՝ մեռաւ արքայն Պարսից Արտաշիր, և փոխանակ նորա թագաւորեաց Վռամ որ և Կրմանն կոչեցաւ՝ ամս տասն։ (Արտաշրի յաջորդեց ոչ Վռամ, այլ Շապուհ Գ. 384—389, և ապա Վռամ)։ Եւ զնոյն բարեկամութիւն կալաւ ընդ աշխարհս Հայոց և ընդ թագաւորին մերում Վռամշապհոյ և ընդ մեծին Սահակայ. և էր խաղաղութիւն ի մէջ Վռամայ և Արկադեայ» (Խոր. Գ. ԾԱ.). Խորենացւոյն պատմութեան այս մասին մէջ կարևոր կէտ է ժամանակագրութեան ուղղութիւնը։ Խորենացին տալով յաջորդել Արտաշրի Բ. (380—384) զՎռամ Գ. Կրման (389—399 կամ 400)՝ կը թողու դուրս զՇապուհ Գ. (384—389),

որ է ի մէջ Արտաշրի և Վռամայ։ Այս ստամամբ յանկարծ կ'ուղղուի ժամանակագրութիւնն, այսինքն Վռամշապուհ, Վռամ և Արկադ լինին ժամանակակից, և պատմութիւնը կը հաշտուի ժամանակագրութեան հետ, ընդ որում կ'երթար խոտորնակ։

**16.** Եթէ պարտ է հաւատալ Խորենացւոյն՝ Վռամշապուհ կ'իշխէր Պարսից և Յունաց բաժնին միանգամայն, տալով երկու տէրութեանց ևս հարկս.—«Եւ Վռամշապուհ ունէր զաշխարհս մեր, և ծառայէր երկոցունց թագաւորացն, տալով զհարկս, զմասինն Պարսից՝ Վռամայ, և զմասինն Յունաց՝ Արկադեայ» (Խոր. Գ. ԾԱ.)։ Այս կը նշանակէ, թէ Հայաստան միացաւ միւսանգամ առ Վռամշապհով։ Սակայն այս չգտնէր հաստատութիւն արտաքին պատմութենէ, և ոչ իսկ ի Խորենացւոյն, որ ինչպէս արդէն տեսանք՝ իւր այս պատմութեան հակառակ կը վկայէ, թէ «այնուհետև (յետ մահուն Արշակայ) ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնին իւրեանց թագաւոր», այլ «աշխարհին իւրեանց մասինն կոմէսս իշխանս»։ Նոյն կը կրկնէ իբր կէս դար յետոյ Պրոկոպիոս, թէ «Յայնմ ժամանակէ հետէ կացուցանէ կայսր ի վերայ Հայոց կոմսս»։ Այնպիսի միութիւն հակառակ էր մանաւանդ քաղաքականութեան Պարսից, որ կը ջանային որչափ հնար էր հեռացունել զՀայս բաժնին իւրեանց ի Յունաց, և մօտենալն թագաւորի բաժնին իւրեանց առ Յոյնս՝ էր նոցա կասկածելի, ինչպէս տեսանք Խոսրովու օրինակէն։ Հաւանական է սակայն, թէ Վռամշապուհ կը փոյթէր ոչ ի Պարսից միայն, այլև ի Յունաց մեծարանս, մինչև Վռամայ կամ մանաւանդ Յազկերտի Ա. (399 կամ 400—420) կարգել զնա միջնորդ, ապաքէն ոչ առանց հաճութեան Արկադեայ, խաղաղել զգժտութիւնն որ ծագած էր ի մէջ գործակալացն Յունաց և Պարսից.—«Յայնմ ժամանակի հիւանդացեալ Արկադ, և շարժմանց ահագնից և հրընկեցութիւն եղեալ ի Բիւզանդիոն, որ յաղագս մեծին Յովհաննու՝ չփոթեալ լինէր թագաւորութիւնն Յունաց. և զօրքն ընդ միմեանս պատերազմէին և ընդ Պարսս։ Վասնորոյ Վռամ հրամայեաց Վռամշապհոյ մեր թագաւորին իջանել ի Միջագետս, զի խաղաղացուցեալ կարգեսցէ զնոսա, և համար երկաքանչիւրոցն հատցէ գործակալացն։ Եւ իջեալ նորա կարգէ զայս ամենայն» (Խոր. Գ. ԾԲ.)։ Արդարև ի Կոստանդնուպոլիս եղան խռովութիւնք (403) ի պատճառս Ոսկեբերանի որ աքսորուեցաւ, բայց այս ամենայն եղած է առ Յազկերտիւ Ա, և ոչ առ Վռամաւ Դ, որպէս կարծէ Խորենացին։

**17.** Երթալն Վռամշապհոյ այս պաշտօնիւ ի Միջագետս՝ և-

ղաւ Հայոց համար առիթ մեծ իմն օգտի, այն է հայերէն նշանագրաց գիւտին, զորմէ պիտի խօսինք առանձին։

«Վախճանեալ Արկադայ՝ ասէ Խորենացին (Գ. ԾԴ.), փոխանակ թագաւորէ նորին որդի, որ կոչեցաւն Թէոդոս փոքր (408—450), և զնոյն բարեկամութիւն (զոր ունէր Արկադ) կալաւ ընդ մերում աշխարհիս և ընդ արքային մերում Վռամշապհոյ։ Բայց—կը յաւելու—զմասն իւր նմա ոչ հաւատաց, այլ ինքեան գործակալօք կալաւ»։ Ա՛յս էր արդեօք բարեկամութիւնն Թէոդոսի առ Վռամշապուհ։ Վռամշապուհ իշխանութեամբ արդարև փոքր, բայց արդեամբք մեծ՝ եղաւ ևս աւելի մեծ, սատարելով իւր ժամանակին երկու մեծ լուսաւորաց, Սահակայ և Մեսրոպայ, ի գործ դրպրութեան ազգին և բարձման մնացորդաց հեթանոսութեան, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Չայս, ինչպէս նաև Վռամշապհոյ պատմութեան ուրիշ կէտերը՝ կը բովանդակէ ճարտար գրիչ մը գեղեցիկ յօդուածով, ոչ չենք կրնար առանց օրինակելու անցնիլ. «Առ հանդարտ և իմաստուն թագաւորաւս ոգի առ աշխարհն Հայոց՝ լռելով անդադար հակառակութեան նախարարութեանցն ընդ միմեանս և ընդ թագաւորին։ Գործէր նա ձեռն ի ձեռն ընդ եպիսկոպոսապետին և և ընդ համօրէն կղերականաց, որոց էր «պատուադիր» (Կորիւն), օգնական էր նա նոցա ի կրթութիւն բարոյից ազգին և յստակութիւն կրօնից ջնջմամբ հեթանոսութեանն։ Էր սատար և յառաջացուցիչ դպրութեան ազգին իւրոյ, հոգաբարձութեամբ գիւտի հայերէն նշանագրաց և կարգմամբ դպրոցաց, սահմանելով զծախսն յարքունուստ։ Ո՛ տայր թէ և զկրթութիւն պալազատին իւրոյ և որդւոյ հասանէր նմա հանել ի գլուխ։ Թողեալ նորա ուստր մի զԱրտաշէս տասնամեայ՝ վախճանէր խաղաղութեամբ, յետ Խոսրովայ Բ-ի լեալ առաջին և վերջին թագաւոր Արշակունի՝ որ մեռանիցի անշարժ յաթոռոյ միահեծան թագաւորութեանն յոր միանգամ ել» (Գաթըրճ. Պատմ. տիեզ. Բ. 523)։

**18.** Յետ մահուն Վռամշապհոյ (414) Սահակ կ՚երթայ առ Յազկերտ (399—420) խնդրել զԽոսրով, որ կը պահուէր յԱնուշ բերդին, թէպէտ արձակ։ Յազկերտ կը շնորհէ Սահակայ խնդիրը, և Խոսրով գալով կը թագաւորէ միւսանգամ տարւոր ժամանակ միայն կամ աւելի պակաս։ Գազաւոն գերեկիցն Խոսրովու մեռած էր. Խոսրով խնդրեց և ընկալաւ որդւոյ նորա Հրահատայ արձակումը, բայց չժամանեց տեսնել զնա. քանզի Հրահատ յետ մահուն հօրը տարուած էր աւելի հեռաւոր տեղ.—«Յայնմ ժամանակի (յետ մահուն Վռամշապհոյ) երթեալ մեծին Սահակայ ի դուռն արքային Պարսից Յազկերտի խնդրել զկապեալն Խոսրով, որ զկնի մահ-

ուանն Արտաշրի (Վռամայ) լուծեալ պահեցաւ արձակ յԱնուշն կոչեցեալ բերդի։ Եւ Յազկերտի հաւանեալ կատարէ զհայցուածսն, տալով նմա (Խոսրովու) զտէրութիւնն՝ արձակեաց զնա ի Հայս։ Սա (Խոսրով) խնդրեաց զՀրահատ որդի Գազաւոնի, որ յետ հօրն նորա մահուան հանեալ յանյիշելի ամրոցէն՝ անդր ևս քան զՍադաստան էր գումարեալ. զոր ոչ ժամանեաց տեսանել Խոսրով՝ մի և եթ ի կրկնումն թագաւորեալ ամ» (Խոր. Գ. ԾԵ.)։

Դժբախտութեամբ Յազկերտ, որ քան զնախորդս իւր աւելի սիրով էր ընդ քրիստոնեայս՝ յանկարծ կը փոխուի, գրգռուելով ի մոլեռանդութենէ քրիստոնէից ոմանց, որ իշխեցին տապուշան այրել—քրէական յանցանք ի Պարս։

**19.** Յազկերտ, որ չէր կրնար բռնութեամբ վարուիլ ընդ Հայս՝ խորհեցաւ այլ հնարս. փոխանակ տալոյ նոցա քրիստոնեայ թագաւոր հայ՝ ղրկեց զիւր որդին զՇապուհ (416—420), խորհելով, որպէս ասէ Խորենացին՝ այնու մեղմով իմն ընդելացուցանել զնախարարս Հայոց ի կրօնս Մազդեզանց. բայց չաջողեցաւ։ Քանզի նախարարք չարարին Շապհոյ պատիւ իբրև թագաւորի, նա մանաւանդ արհամարհանօք գնային ընդ նա։ Նախարարաց արհամարհոտ վարման օրինակներ կը յիշէ Խորենացին. «Յետ որոյ (Խոսրովու) Յազկերտ ոչ ևս ի նոցանէ, այլ զՇապուհ զորդի իւր թագաւորեցուցեալ Հայոց, հնարս դաւնութեան խորհելով՝ իբր թէ այնպէս հանապազ առ նմա նախարարքն յանդգնեցին խօսիւք, տուրևառիւք, խրախճանութեամբ և զբօսանօք որսոց, այլ և եկամուտ հարազատութեամբ. զի մարթ լիցի զնոսա և ի դէն Մազդեզանց ստղապեցուցանել , որով ամենևիմբ զատչիցին ի Յունաց. ոչ գիտելով անմիտն, թէ Տէր ցրուէ զխորհուրդս հեթանոսաց. թէպէտ առժամայն աջողեցաւ։ Քանզի մեռեալ Համազասպայ, և ի սգի մեծի եղեալ Սահակայ՝ ոչ ոք ի միաբանութիւն հաւաքեաց զգունդս Հայոց, վասնորոյ դիւրամուտ եղև յաշխարհս Շապուհ, ընդ իւր ածելով զՀրահատ և զամենայն փտարանդիսն. սակայն ոչ կարաց հաճել զմիտս նախարարացն, ամենեցուն ատեցեալ զնա, և ոչ արքայօրէն մեծարէին զնա յորս կամ ի խաղու։ Իր երբեմն զհետ երամակաց ցռուց յանդգնագոյնս արշաւեալ ընդ խորտաբորտսն և ի վիմուտ տեղիս, յորմէ կասել սկսաւ Շապուհ։ Իսկ Ատոմայ Մոկացւոյ եպերեալ զնա ասէ. Գնա, գնա, աստուածորդիդ Պարսից, թէ այր իցես։ Եւ նա ասէ. Դու երթիջիր, զի ի քարինս՝ դիւաց է շահատակել։ Դարձեալ յայլում ժամու դիպեցաւ ի շամբս կինճս որսալ հրով, և Շապհոյ ոչ համարձակեալ ի թաւուն քաջարշաւ լինել, մինչև շրջապատէր հուրն. և նորա զհայեցուածսն յերկուս

բաժանեալ՝ այսր անդր բերեալ լինէր երկվարաւն։ Միւսանգամ ասէ Ատոմ. Աստուածորդիդ Պարսից, ահա հայր քո և աստուած, ընդէր զանգիտես։ Իսկ Շապուհ ասէ. Թողեալ զկատակելդ՝ յանցանել ընդ հուրդ դարձո զքեզ, որ և ես զկնի քո. քանզի յառաջելն ձիս իմ խրտչի։ Յայնժամ այպանեաց զնա Ատոմ ասելով. Միթէ և այդ քարէ՛նք իցեն, զի ես յառաջեցից. և արդ եթէ դու զՄոկացիս կոչես դիւազգիս՝ ես զՍասանեանսդ կոչեմ կնամարդիս։ Եւ մտրակեալ զերիվարն՝ իբրև ընդ հովիտս ծաղկանց անցանէր ընդ հուրն, զերծուցանելով զՇապուհ։ Եւ յետ այնր գիտացեալ, եթէ նա լուռ ոչ լինի՝ անցեալ գնայ ի Մոկաց աշխարհն։ Այլ երբեմն ի մականական խաղուն երկիցս պատահեաց Շաւասպայ Արծրունւոյ զգնդակն հանել ի Շապհոյ։ Եւ նորա ածեալ նմա մականաւն ասէ. Ճանիր զքեզ։ Իսկ նորա պատասխանեալ, թէ Այո՛, ասէ, ճանաչեմ և զիս արքայորդի ի սերմանէ Սանասարայ, և ունիմ իշխանութիւն ընդ եղբարս քո զքարձն արքայի համբուրել, որպէս և անուանակոչեցեալս եմ։ Եւ զայս ասացեալ յոյժ քամահաբար՝ ի ձիարձակարանէն արփայագնաց լինէր։ (Այս բան Խորենացւոյն—«Որպէս և անուանակոչեցեալս եմ»՝ կ'ակնարկէ Արծրունի անուան նշանակութիւնը, որ առ այժմ անծանօթ է մեզ)։ Դարձեալ երբեմն ի խնջոյսն ուրախութեան Խոսրով Դարդմանացի ի գինւոջ զեղխեալ առաջի Շապհոյ՝ զօրէն սեղեխի տափեցելոյ զհետ ջնարահար քաջամատն կնոջ կրթէր։ Ընդ որ ցասուցեալ Շապհոյ՝ հրամայէ ունել զնա և ի դահլճին պահել. այլ նա ի վաղակաւորն հաստատեալ զաջն, պէս գունակ Տրդատայ Բագրատունւոյ՝ յիւր տունն անցեալ գնայր, և ոչ ոք ի սպասաւորացն արքունի համարձակեալ արկանել ի նա ձեռն, յառաջագոյն գիտելով զփորձ առնն» (Խոր. Գ. ԾԵ.)։

Շապուհ յետ անարգաբար թագաւորելոյ իբրև չորս տարի (416—419), լսելով զհիւանդութիւն հօր իւրոյ Յազկերտի՝ կը փութայ ի Պարսս, բայց չհասնիր թագաւորութեան, քանզի հօրը մահուան օրը կ'սպանուի.—«Զքառեամ անարգաբար թագաւորեալ Շապհոյ՝ հասանէ նմա համբաւ հիւանդութեան հօրն, և գնայ փութանակի, իւրում տեղակալին հրամայելով զօրագլխի՝ ունել զմեծամեծս Հայոց և տանել ի Պարսս։ Իբրև եղև հասանել Շապհոյ ի Տիզբոն՝ մեռաւ հայրն նորա Յազկերտ, թագաւորեալ ամս մետասան։ Ի նմին աւուր և նա անդէն ի դրանէ մարդկանն նենգեալ սատակեցաւ» (Խոր. Գ. ԾԶ.)։ Յազկերտ Ա. թագաւորեց ո՛չ 11, այլ իբր 20 տարի ըստ նմին իսկ Խորենացւոյ, որ գիտէ զնա թագաւորած Վռամշապհոյ 6-րդ տարին, այն է 399-ին, և մեռած 419-ին կամ 20-ին։

**20.** Տապուհ ի մեկնելն հրամայած էր իւր տեղակալին՝ բռնել Հայոց մեծամեծներն և տանել ի Պարսս։ Բայց Նախարարք գումարելով զզօրս իւրեանց, զօրավարութեամբ ուրումն Ներսեհ Ճիճրակացւոյ՝—այս անունն անծանօթ է մեզ—ընդդիմացան Պարսից զօրուն, որոց զօրագլուխն սպանուեցաւ ի քաջէն Ապրսամայ Սպանդունւոյ։ Մեծ քաջութիւն ցուցին, ասէ Խորենացին, մանաւանդ Վանանդեցիք։ Բայց արդիւնքն ոչ այլ ինչ եղաւ՝ բայց աւեր և ապականութիւն։ Ոչ սակաւ վնաս եղաւ նաև տէրութեան. քանզի նուազեցան հարկք, և ճանապարհք լցան աւազակօք։ Այս անիշխանութիւնը տևեց իբր երեք տարի (419—421).—«Ի ձեռն քաջին և բարեբախտին Ներսեհի Ճիճրակացւոյ զօրագլուխ եղելոյ ժողովեալ նախարարացն Հայոց հանդերձ զօրօք իւրեանց՝ տան ընդ գնդին Պարսից պատերազմ, հարկանեն զզօրսն, և սպանանէ Ապրսամ Սպանդունի զզօրագլուխն. և ինքեանք ցրուեալ տիրագլուխք անձնապահապետք յամենայն լերինս և յամուրս շրջէին, յորում համօրէն Վանանդեցիք երևեցան նահատակեալք քաջութեամբ։ Ուստի աղմկաւ և բազում խռովութեամբ մնացեալ աշխարհս մեր յանիշխանութեան ամս երիս՝ աւերեալ ամայանայր. վասնորոյ պակասեալ լինէին հարկք արքունի, և հատեալ ճանապարհք ռամկաց, և ամենայն բարեկարգութիւն վրդովեալ ապականէր» (Խոր. Անդ.)։

Այս ապստամբութիւն կը թուի թէ ծանր եղաւ Հայոց, ո՛չ միայն անիշխանութեան պատճառաւ, այլ և ի պատճառս պատերազմին որ ծագեցաւ ի մէջ Յունաց և Պարսից։ Հոս կը հասնի մեզ յօգնութիւն Սոկրատ պատմիչ ժամանակակից։ Արդէն 421-ին Վռամ Ե. գոռոզաբար կը պահանջէր զոմանս ի քրիստոնեայ Պարսից, որ ապաստանած էին առ Յոյնս և զորս Յոյնք չառին յանձն տալ։ Այս, ինչպէս նաև առևտրական վէճք գրգռեցին պատերազմ ի մէջ երկու տէրութեանց։ Հայաստան և Միջագետք եղան կռխան զօրաց, թէպէտ ճակատք երկուց կողմանց չունեցան ուրիշ արդիւնս՝ բայց անագորոյն յաղթութիւններ և անօգուտ պաշարումներ։ Յոյնք ի զուր փորձեցին առնուլ զՄծբին, և ոչ Պարսիկք յաջողեցան ի Միջագետս։ Ի վախճանի կռեցան դաշինք, և Հայաստանի բաժանումն հաստատուեցաւ միւսանգամ։ Այս խաղաղութեամբ ազատեցան Յունաց բաժնին Հայք. բայց այնք որ ի բաժնին Պարսից էին՝ կրեցին Վռամայ ցասման վրէժը։ Զայս կ'ակնարկէ թերևս ասելն Խորենացւոյն, թէ «Վռամ գքէն վրիժուցն խնդրեաց ի մերմէ աշխարհէս, խաղաղութիւն առնելով ընդ Յոյնս՝ ոչ ի բաժին նոցա հայի» (Խոր. Գ. ԾԶ.)։ Խորենացին զայս Վռամ կ'անուանէ Եր-

կրորդ, որ պարտի լինել Հինգերորդ։ Կ'երևի թէ Խորենացին չգիտեր առաջին չորս Վռամներն (Վռամ Ա. 272—275, Վռամ Բ. 275—292, Վռամ Գ. ամիսս ինչ, և Վռամ Դ. 389—400)։

**21.** Կարևոր է հոս գիտել, թէ ինչ եղաւ Սահակ այս անիշխանութեան ժամանակ։ Սահակ տեսնելով զերկիրն յանիշխանութեան՝ գնաց Յունաց կողմը, բայց չգտաւ ընդունելութիւն ըստ արժանի իւր պատուոյն և աստիճանին, այսինքն իբրև եպիսկոպոս վիճակին, և ոչ թոյլ տրուեցաւ նմա ուսուցանել ժողովրդեան հայերէն դպրութիւն նորագիւտ նշանագրով. —«Իբրև ետես մեծն Սահակ զայս ամենայն չարիս ի մասինն Պարսից՝ գնաց նա զկողմամբք արևմտից մերոյ աշխարհիս, ի բաժին մասինն Յունաց, և ոչ ըստ արժանեաց իւրոց եգև ընկալեալ» (Խոր. Գ. Ծէ.)։ Յետ գիւտին նշանագրաց բացուեցան արդարև դպրոցք, ինչպէս պիտի տեսնենք, բայց ի բաժնին Պարսից միայն, և ոչ ի բաժնին Յունաց, որպէս ասէ Խորենացին այլուր. «Մեսրոպ ժողովեալ մանկունս՝ դպրոցս կարգեաց յամենայն գաւառս և ուսոյց զբնաւ կողմանս բաժնոյն Պարսից, բաց ի Յունաց մասնէն» (Խոր. Գ. ԾԴ.), և պատճառը կու տայ.—«Որք, ասէ, ընդ ձեռնադրութեանն տուգանեցան՝ վիճակեալ յաթոռն Կեսարու, փարել յունական դպրութեամբ», այսինքն որովհետև Սահակ առած չէր ձեռնադրութիւնն ի Կեսարիոյ՝ հօտը պիտի կրէր պատիժը, զրկուելով հոգւոյն և լեզուէն միանգամայն։ Բռնութիւնը բռնութեամբ կը վանի. ուստի խորագէտն Սահակ գտաւ այլ հնարս։ Կոստանդնուպոլսի եպիսկոպոսունք, իբրև տիեզերական պատրիարք՝ կը պնդէին ունենալ վերին իմն իշխանութիւն բոլոր մետրապոլտաց վրայ, թէպէտ այս վերջինք, մանաւանդ Կեսարուն՝ հակառակ էին այս պահանջման։ Սահակ նպաստաւոր գտնելով ինքեան Կոստանդնուպոլսի պատրիարքաց այս պահանջումը՝ խորհեցաւ բողոքել զմետրապոլտէն առ պատրիարքն, իբրև առ գլխաւոր. և որովհետև մետրապոլիտն աշխարհական իշխանաց ձեռօք կը գործէր՝ հարկ էր բողոքել նաև առ կայսրն։ Ուստի գրուեցաւ թուղթ նախ առ Թէոդոս. «Խաղաղասէր կայսեր, տեառն իմում Աւգոստոս Թէոդոսի. Սահակ Հայոց եպիսկոպոս ի Տէր խնդալ։ Գիտեմ զի համբաւ նեղութեանս մերոյ հասեալ է ի ներող լսողութիւն ինքնակալիդ. սակս որոյ յուսալով ի գթածութիւն բարերարութեանդ քո՝ դիմեալ ապաւինեցայ յոտս ձեր. և ոչ հանդիպեցայ ընդունելութեան յիմում վիճակիս ի հրամանէ վերակացուացս սոցա. այնչափ առեցեալ զմեզ՝ մինչև զնշանագիրս անգամ ոչ ընկալան, զորս եբեր նոյն այր, զոր առաքեցի առ ձեր բարերարութիւնդ, բազում անգամ ճգնեալ գորա յԱսորւոց աշ-

խարհին։ Արդ հաճոյ թուեցի տէրութեանդ ձերում ոչ անիշխան առնել զմեզ ի մերում վիճակիս, և հրամայել ընդունել զմեզ և զվարդապետութիւնս մեր։ Ողջ լեր»։

Ահա օրինակ թղթոյն Սահակայ առ պատրիարքն.

«Սահակ եպիսկոպոս Հայոց. առ վարդապետ մեր Ատտիկոս եպիսկոպոս աշխարհամուտ դրանդ, օրհնութեամբ ողջոյն։ Յուսացեալ ի ձեր սրբութիւնդ՝ առաքեցի զուսուցող մերոյ աշխարհիս Մեսրոպ և զթոռն իմ Վարդան, որպէս զի ի լսել քո ի գոցանէ զաղէտս նեղութեան մերոյ՝ բարեխօսեալ առ մեծի թագաւորիդ օգնեսցես մեզ, որպէս արդարև եղբայր սիրելի։ Ողջ լեր»։ Ինչպէս յայտնի է նամակէն՝ թուղթերուն հետ ղրկուեցան նաև Մեսրոպ և Վարդան Մամիկոնեան թոռն Սահակայ, խօսել բերանացի։

Ըստ Խորենացւոյն՝ Սահակ գրեց նաև առ Անատոլիոս զօրավար կողմանց բաժնին Յունաց, աղաչելով զնա օգնել Մեսրոպայ և Վարդանայ ի ճանապարհորդութեան սոցա ի Կոստանդնուպոլիս. «Սահակ եպիսկոպոս Հայոց. քաջի զօրավարի Անատոլեայ խնդալ։ Շնորհ ունիմ Աստուծոյ յաղագս զքեզ պատրաստելոյ մեզ յապաւէնութիւն. վասնորոյ զգացուցանեմ, զի ի հայթայթանս մերոյ նեղութեանս առաքեցի զուսուցանողդ մեր զՄեսրոպ և զթոռն իմ Վարդան ի դուռն արքունի. և աղաչեմ զքո քաջութիւնդ ձեռնտու լինել ճանապարհիդ։ Ողջ լեր»։

Անատոլիոս թղթով կ'իմացունէ կայսեր զառաքումն Մեսրոպայ և Վարդանայ, և առնլով հրաման՝ կ'ուղարկէ զնոսա։ Մեսրոպ զբազմութիւն աշակերտացն, զորս կը տանէր ընդ իւր, թողլով ի Մելիտինէ առ Ակակիոսի եպիսկոպոսի քաղաքին՝ կ'երթայ ընդ եպիսկոպոսին Դերջանու ի Կոստանդնուպոլիս.—«Զայս տեսեալ Անատոլեայ, միանգամայն և զլուր առաքինութեանն Մեսրոպայ յիշեալ, որ յառաջագոյն հնչեցեալ էր զնմանէ՝ ոչ փոքր արար նոցա ընդունելութիւն, մինչև ի ձեռն փոփոխ ընթացից գրով զգացուցանել կայսերն։ Առնու հրաման արժանապէս առաքել փութով։ Վասնորոյ արգելեալ ի քաղաքին Մելիտինէ զբազմութիւն աշակերտաց, զոր ընդ ինքեան ածեալ էր Մեսրոպայ, հանդերձ գլխաւորաւն նոցա Ղևոնդիւ առ եպիսկոպոսին Ակակիոսի, և իւր Անատոլեայ առեալ զՄեսրոպ և զՎարդան՝ տայ ցեպիսկոպոսն Դերջանու ցԳինիթ, և բարեփառութեամբ զնոսա յուղարկէ» (Խոր. Գ. Ծէ.)։

Սահակայ բողոքն իբրև առ բարձրագոյն ատեան չկարէր չթուել հաճոյ կայսեր, իբրև նշան հպատակութեան (որում կը թուի թէ կ'սպասէր կայսր, ինչպէս կ'երևի նամակէն), և մանաւանդ պատրիարքին, որ թերևս կը մնար այնպիսի առթի՝ ցուցնել իւր վե-

րին իշխանութիւնն ի վերայ մետրապոլտին․ ուստի ընդունեցաւ Սահակայ խնդիրը.—«Մտին, ասէ Խորենացին, Մեսրոպ և Վարդան ի Բիւզանդիոն, և յանդիման եղեալ մեծի թագաւորին՝ առին զոր յուսայինն և զոր ոչն յուսային, և դարձան հանդերձ թղթով այսպիսեաւ. «Ինքնակալ Թէոդոս Աւգոստոս և կայսր Հռոմայեցւոց. մեծի Սահակայ եպիսկոպոսի խնդալ։ Հրամայեալ մեր տեսանել զթուղթս՝ վերահասու եղաք գրելոցս առ ի քէն, և մեղադրեցաք յոյժ, զի ամենայն սրտիւ միտեցար զհետ հեթանոս թագաւորի, և մեզ ոչ թղթով բաւականացար ծանօթանալ։ Եւ առաւել յայսմ մեղադիր եմք, զի արհամարհեալ զճարտարօքս որ ի մերում քաղաքիս՝ յԱսորւոց ոմանց խնդրէիր զիմաստից գիւտս։ Կանոնօք հաճեալ էաք ընդ մերոց ծառայիցդ արհամարհել զայդպիսի ուսմամբդ. բայց զի յետոյ պատմեաց մեզ Մեսրոպ, թէ կատարումն արուեստիդ ի շնորհաց Վերնոյն եղև՝ գրեցաք զի ամենայն փութով ուսցին, և զքեզ պատուով ընկալցին, որպէս զարդարև վարդապետ իւրեանց, հանդոյն արքեպիսկոպոսին Կեսարու, և դարմանք և ծախք յարքունուստ եղիցին։ Եւ հրամայեցաք քաղաք շինել յաշխարհիդ Հայոց յապաւինութիւն ձեզ և մերոց զօրացս։ Եւ վասն քո արարաք ստրատելատ զՎարդան զորդի որդիացելոյ քո, և յառաջին վարդապետսն գրեցաք զՄեսրոպ։ Ողջ լեր»։ Գրեթէ նոյն մեղադրանօք, բայց ի նպաստ է թուղթ պատրիարքին.—«Ատտիկոս ինքնագլուխ եպիսկոպոս Կոստանդնուպոլսի. եղբօր սիրելւոյ և աթոռակցի, Սահակայ եպիսկոպոսի Հայոց ի Տէր խնդալ։ Բազում գոհութիւն Աստուծոյ մատուցանեմք յաղագս քո բարեհամբաւութեանդ ի մէջ այդպիսի բարբարոս ազգի. այլ ազատ ի մեղադրանաց ոչ թողումք, որ ոչ կանխաւ յիշատակեցեր զսիրելութիւն Գրիգորի և Ներսեսի, երանելեաց քոց հարց։ Եւ առաւել ընդ այս զարմանամք, եթէ զիա՞րդ թողեր զաղբիւրն եկեղեցւոյ զհայր մեր սուրբ Յովհաննէս, որ ոչ միայն տիեզերական մայրաքաղաքիս, այլ սովաւ և ամենայն քրիստոնեայք և ընդհանուր աշխարհ ի նմանէ վարդապետեալ ուսանի, ուստի և Ոսկի բերան կոչեցին զնա։ Եւ ձեզ զանց զնովաւ արարեալ՝ կամեցայք ի սահանական ջրոց զփափագ ծարաւոյն յագեցուցանել. մինչև Ամենակալին տեսեալ զսնոտի աշխատութիւնն՝ բխեաց ի ձեզ զշնորհս Հոգւոյն, ընդ որ այժմ ուրախ եմք։ Իսկ արդ հրամանաւ ինքնակալին Աւգոստոսի տուեալ լիցի քեզ իշխանութիւն վարդապետել զկողմնդ մեր. և աղանդոյն բորբորիտոնաց՝ կամ հաւանել և կամ հալածել ի քումմէ վիճակէդ։ Եւ զառաքեալս ի քէն զՄեսրոպ ձեռնադրեցաք լինել եկղեսիաստիկոս» (Խոր. Գ. Ծէ.)։

Հաւանական է թէ ի պատճառս անարժան ընդունելութեան, զոր տեսաւ Սահակ ի բաժնին Յունաց՝ եղաւ թղթակցութիւն ի մէջ Սահակայ մի կողմանէ, և Թէոդոսի և Ատտիկոսի միւս կողմանէ, և անտարակոյս յունարէն։ Ուստի եթէ օրինակ թղթոցն, զորս կու տայ մեզ Խորենացին, են վաւերական՝ թարգմանութիւն են։ Սակայն ինչպէս այլք ոմանք ի թղթոց զորս կը բերէ Խորենացին՝ նոյնպէս սոքա կու տան կասկած։ Մեղադրանք Թէոդոսի, ըստ Խորենացւոյն, զՍահակայ, թէ «ամենայն սրտիւ միտեցար զհետ հեթանոս թագաւորի, և մեզ և ոչ թղթով բաւականացար ծանօթանալ», թէ «արհամարհեալ զճարտարօքս որ ի մերում քաղաքիս՝ յԱսորեաց ոմանց խնդրէիր զիմաստից գիւտս», և թէ «հաճեալ էաք ընդ մերոց ծառայիցդ արհամարհել զայգպիսի ուսմամբ, բայց զի կատարումն արուեստիդ ի շնորհաց Վերնոյն եղև՝ գրեցաք զի ամենայն փութով ուսցին»՝—այսպիսի բանք, ասեմք, չունին ամենևին նշանակութիւն ի բերան Թէոդոսի։ Նոյնչափ անտեղի է մեղադրելն Ատտիկոսի զՍահակ, թէ «թողեր զաղբիւրն եկեղեցւոյ զհայր մեր սուրբ Յովհաննէս, որ ոչ միայն տիեզերական մայրաքաղաքիս, այլև ամենայն քրիստոնեայք և ընդհանուր աշխարհ ի նմանէ վարդապետեալ ուսանի, ուստի և Ոսկի՛ բերան կոչեցին զնա, և ձեր զանց զնովաւ արարեալ՝ կամեցայք ի սահանական ջրոց զփափագ ծարաւոյն յագեցուցանել», և թէ «Ամենակալին տեսեալ զսնոտի աշխատութիւնն՝ բխեաց ի ձեզ զշնորհս Հոգւոյն»։ Հայք որ կը խնդրէին հնարել կամ գտնել ի կարգի զնշանագիրս իւրեանց՝ չունէին պէտս դիմել Կոստանդնուպոլսոյ գիտուններուն և ոչ եկեղեցւոյ վարդապետի, որպիսի էր Ոսկեբերան, այլ քաջ հռետորներու կամ քերականներու, և արարին իսկ այնպէս ըստ պատմութեան։ Եւ ոչ այբուբեն մը արհամարհելի է՝ եթէ չէ հրաշիւք տրուած։ Դարձեալ այն չափազանց գովեստն զՈսկեբերանէ, թէ է «Աղբիւր եկեղեցւոյ», և թէ «Ոչ միայն տիեզերական մայրաքաղաքիս, այլ և ամենայն քրիստոնեայք և ընդհանուր աշխարհ ի նմանէ վարդապետեալ ուսանի, ուստի և Ոսկի բերան կոչեցին զնա»՝ յետնոյ մը բերան թերևս հնարաւոր էր, բայց ոչ Ոսկեբերանի անմիջական յաջորդին Ատտիկոսի, որ թշնամի իսկ էր նորա։

Մեսրոպ և Վարդան կու գան առ Անատոլիոս, որ իսկոյն կը կատարէ կայսեր հրամանը։ Սահակ կը հաստատուի ի վիճակին իւրում։ Յունաց բաժնին իշխանք և բազումք ի կղերականաց կու գան առ Մեսրոպ, որ կ'ուսուցանէ զնոսա՝ ինչպէս ուսուցած էր զարևելեայս.—«Եկեալ Մեսրոպայ և Վարդանայ ստրատելատի՝ գտին զզօրավարն Անատոլ հուպ ի մերս եկեալ սահման. որոյ

ընկալեալ զհրամանն արքունի՝ առնել յօժարտաբար և քաջափոյթ ձեռնարկութեամբ զգործն ի կատարումն աւարտեաց։ Քանզի իշխանք և գլխաւորք և որք միանգամ յայտնիք էին ի կողմանն՝ ի մի վայր եկեալ հաստնէին հանդերձ ամենայն քահանայական ազգաւն ինքնակամ, իբր յաստուածառաք ձայնէ հրաւիրեալ․ զոր անյապաղաբար սկսեալ ուսուցանել՝ երագապէս վարդապետեցին ըզկողմն արևմտեայն, որպէս զարևելեայն» (Խոր. Գ. ԾԲ.)։ Սահակայ մեծամեծ գործերէն մին ևս այս եղաւ, որ արդէն քաղաքականապէս պառակտեալ Հայք զերծան նաև եկեղեցականապէս պառակտելէ։ Առանց Սահակայ՝ հայ ազգէն երևելի մաս մը վաղուց կորուսած էր և՛ զեկեղեցին և՛ զլեզուն, միութեան երկու զօրաւոր կապք յետ քաղաքականին։

**22.** Կորիւն ևս կը պատմէ Մեսրոպայ երթն ի Կոստանդնուպոլիս, առանց յիշելու թուղթեր գրուած ի Սահակայ առ կայսր և առ պատրիարքն, և ի սոցանէ առ Սահակ. ծածկութեամբ կ՚անցնի նաև երթալուն պատճառը։ Ըստ Կորեան՝ Մեսրոպ կամելով վարդապետել նաև Յունաց բաժնին Հայոց՝ կ՚երթայ ի Կոստանդնուպոլիս առնուլ հրաման, և ընդունելով մեծ պատուով կը դառնայ հրովարտակօք կայսեր առ Անատոլիոս զօրավար Անտիոքայ, և կը բանայ արքունի ծախիւք դպրոցներ յուսումն հայերէն նորագիւտ դպրութեան.—«Յորժամ այնպէս ընդ ամենայն տեղիս լի առնէր Մեսրոպ զսուրբ Աւետարան Տեառն և ամենեցուն զգուշացուցեալ զկենաց ճանապարհն վարելոյ՝ խորհուրդ առնոյր այնուհետև վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռոմոց։ Եւ փութացեալ գնայր հանդերձ աշակերտօք անցանել ի կողմանս Յունաց. և վասն առաւելագոյն բարեգործ համբաւուց յառաջագոյն զնմանէ անդ ի հիւսիսական կողմանց հռչակելոց, առնել միամտութեամբ ընտանեբար յեպիսկոպոսաց աշխարհին և յիշխանաց և ի գաւառականացն պատուեալ, մանաւանդ ի սպայապետէն աշխարհին որ անուանեալ կոչէր Անատոլիս, որ զիրս առաջի եդեալ՝ գրով ցուցանէր կայսերն որում անուն Թէոդոս կոչէին, որդի Արկադու կայսեր. ուստի և հրաման եղանէր՝ վայելուչ մեծարանօք զսուրբն Ակումիդ (առաջին վարդապետ՝ ըստ Խորենացւոյն Գ. ԾԷ.) անուն կոչելոյ։ Իսկ նորա զբազմութիւն աշակերտացն (զորս ընդ իւր կը տանէր Մեսրոպ թերևս յուսումն հելլենարէն լեզուի) տարեալ ի քաղաքն Մելիտինացւոց՝ յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին զոր Ակակիոսն կոչէին, և գլխաւոր աշակերտացն թողոյր զայն որում Ղևոնդէոսն կոչէին, այր հաւատարիմ և ճշմարտապաշտ։ Եւ առեալ երանելոյն (Մեսրոպայ) զպատուական եպիսկոպոսն Դերջանոյ որոյ ա-

նուն կոչէր Գինթ, և սակաւս յաշակերտաց անտի, և բազում պատուգտեալ՝ հասանէին ի Թագաւորակաց քաղաքն Կոստանդիական, զորմէ խսկոյն պատմէին յարքունիսն։ Եւ մտեալ առաջի պատուական աթոռոյն՝ յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն և հայրապետին սրբոյ կաթողիկոսին աշխարհամուտ դրանն որում Ատտիկոս կոչէին, յորոյ և գտեալ շնորհս՝ հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդէն ի տիեզերական քաղաքին մեծարել դարմանօք կարգելովք յեկեղեցւոյն և յարքունեաց և ի պատուական իշխանաց քաղաքին։ Եւ ապա յետ պասեքին կատարելոյ ցուցեալ կայսերն զպիտոյից հանգամանս, և առեալ զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերօք (բառ լատ. sacer—նուիրական, իբր գիր արքունի) կայսերագիր նշանակելովք վասն մանկտոյն յաշակերտութիւնն առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ, և եկեղեցեաց հաստատութեան, և մեծամեծ պարգևօք պատուել։ Վասնորոյ հաւանեցուցեալ ճշմարտին զարքունիսն, և երկիր պագեալ ծիրանափառ օգոստականացն և սրբոյ կաթողիկոսին, և ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանացն քաղաքին, և ամենայն իւրայովքն յաջողեալք՝ ելանէին ի դեսպակս ի կառս արքունատուրս։ Եւ մեծաւ շքով և բազում վայելչութեամբ ունէին զճանապարհս արքունականս, և ամենայն քաղաքացն պատահելով պայծառագոյն երևէին, մեծամեծ պարգևս գտեալ՝ գային հասանէին ի ժամադիր կողմանս. և անդէն վաղվաղակի պատահեալ սպարապետին Հայոց, հանդերձ սակերօք կայսեր յանդիման լինէին։ Եւ նորա առեալ սակերս կայսերական նշանօք՝ փութայր վաղվաղակի զհրամանն կատարել. և հրեշտակս արձակեալ այնուհետև ի գաւառս կէս ազգին Հայոց յիշխանութեանն կայսեր բազմութիւն մանկտւոյ ժողովել, և նոցին ռոճիկս կարգել ի պատեհագոյն տեղիս, յոր և երանելին զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ և ժողովելոցն քաղցրացուցանէր» (Կորիւն)։

**23.** Այն ինչ խաղաղած էր այս վէճն ի բաժնին Յունաց ի նպաստ Հայոց՝ Պարսից բաժնին նախարարներէն եկաւ հրաւէր առ Սահակ՝ երթալ հաշտեցուցանել զնոսա ընդ միմեանս. քանզի Վռամ (Ե.) տեսնելով, թէ առանց նախարարաց անհնար էր նուաճել զերկիրն՝ կ՚առաջարկէր ի ձեռն Սմբատայ ասպետի խօսել ընդ նոսա ի հաշտութիւն։ Ուստի Սահակ յանձնելով վարդապետութեան գործն Մեսրոպայ՝ կը փութայ յԱյրարատ.—«Յայնժամ գային հասանէին ի բազում նախարարացն կոչնականք զմեծէն Սահակայ, զի ի մէջ նոցա անցեալ՝ ի միաբանութիւն հաւաքեսցէ զամենեսեան։ Քանզի գիտացեալ արքային Պարսից Վռամայ, եթէ առանց նախարարացն Հայոց ոչ մարթի ունել զաշխարհն՝ հաշտութիւն խօսեցեալ ի ձեռն

Սմբատայ ասպետի։ Վասնորոյ թողու զՄեսրոպ ի վերայ վարդապետութեան կողմանն արեւմտից, և առ նմա զթոռունս իւր զՀմայեակ և զՀամազասպեան, զեղբարսն Վարդանայ սպարապետի... ինքն եկեալ անցանէ յԱյրարատեան գաւառն» (Խոր. Գ. ԾԲ.)։ Սահակ վարդապետութեան գործին հետ կը յանձնէ Մեսրոպայ ուրիշ գործ, այն է *չարչարանօք եւ մահուամբ* հալածել Բորբորիտոն կոչուած աղանդաւորներ, հին գնոստիկեաններէն մնացորդ, որ ապաւինած էին այն կողմերը։ Հալածել այս աղանդաւորներն՝ էր մին ի պայմանաց, որովք տրուեցաւ Սահակայ իշխանութիւն Յունաց բաժնին Հայոց վրայ ի պատրիարքէն Կոստանդնուպոլսի, ինչպէս տեսանք ի թղթին Ատտիկոսի առ Սահակ ըստ Խորենացւոյն։ Կորիւն ևս Սահակայ տըրուած արտօնութեանց կարգը կը դասէ այս հալածումը.—«Առեալ (Մեսրոպայ) զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերօք (հրովարտակօք) կայսերագիր նշանակելով՝ վասն մանկտոյն յաշակերտութիւնն առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ, և վասն ժանտագործ ազգին բարբարոսաց (բորբորիտոնք՝ ըստ Խորենացւոյն), և եկեղեցեաց հաստատութեան»։ Ըստ Խորենացւոյն՝ Սահակ ի մեկնելն ի բաժնէն Յունաց՝ յանձնեց Մեսրոպայ կատարել այն պայմանը.—«Հրամայէր քննել զժանտագործ Բորբորիտոնսն, եթէ ոչ հեզութեամբ և ոչ սաստիւ գայցեն յուղղութիւն՝ չարչարանօք հալածել, զի թշնամանք ի թշնամանաց վրէժ առնուցուն, և խայտառակեսցի մահուամբ անիրաւ մահ հոգւոց»։ Կորիւն ասէ, թէ Մեսրոպ ի գալն ի Հայս՝ կատարեց այն հրամանը։ Յետ պատմելոյ թէ «Երանելին (Մեսրոպ) զվարդապետութիւն իւր ի գործ արկեալ ժողովելոցն քաղցրացուցանէր»՝ կը յաւելու. «Ապա յետ այնորիկ ձեռն արկանէր զգժպատեհ և զկամակոր բարբարիանոս աղանդն քննելոյ. և իբրև ոչինչ գտանէր հնարս յուղղութիւն ածելոյ՝ առեալ ի գործ արկանէր ըզթշուառացուցիչ գաւազանն, ծանրագոյն պատուհասիւք ի բանտս, ի տանջանս, ի գելարանս։ Իսկ յորժամ այնու ևս պակասեալք ի փրկութենէն գտանէին՝ խորտակեալս, ապախանձեալս, մրեալս և գունակ գունակ խայտառակեալս՝ յաշխարհէն կորզէին» (Կորիւն)։ Ի բանից աստի Կորեան յայտնի է, թէ միջին դարուց հաւատաքննութեան կտտանօք կատարուեցաւ այն հալածումն, զոր չէ բաւական արդարացուցանել ժամանակին ոգին՝ հալածելու աղանդաւոր անուանեալներ։

**24**. Սահակ, ապաքէն խորհրդով նախարարաց զօրս գումարեց առ իւր՝ կը ղրկէ զՍմբատ և զՎարդան առ Վռամ։ Կը շնորհուի ներումն, և կը դրուի թագաւոր որդին Վռամշապհոյ Արտաշէս, պարսիկ անուամբ Արտաշիր, վերջինն Արշակունի թագաւորաց.—«Եկեալ

(Սահակայ) յԱյրարատեան գաւառն, կուտեալ զամենայն նախարարազունսն՝ առաջի զՍմբատ ասպետ և զՎարդան սպարապետ զԹոռն իւր ի դուռն արքային Պարսից։ Եւ նորա հաստատեալ զհաշտութիւնն՝ մուրհակ մոռացման յանցանաց կնքէ, ըստ խնդրոյ նոցա Թագաւոր կացուցանելով զԱրտաշէս որդի Վռամշապհոյ. և փոխեալ զանունն, Արտաշիր կոչելով՝ զաշխարհս Հայոց ի նա հաւատաց առանց պարսիկ վերակացուի. որ տիրեաց ամս վեց» (Խոր. Գ. ԾԲ.)։

**25.** Խորենացին Գ. դպրութեան ԾԹ. գլխով կը խօսի զամբութեանց Կարնոյ, զոր Անատոլիոսի համար ասէ թէ շինեց հրամանաւ փոքուն Թէոդոսի։ Արդէն ինքն Թէոդոս ի նամակին իւրում առ Սահակ, ըստ Խորենացւոյն, խոստացած կամ ծանուցած էր, թէ պիտի շինէր քաղաք յապաւինութիւն Հայոց և իւր զօրուն—«Հրամայեցաք քաղաք շինել յաշխարհիդ Հայոց յապաւինութիւն ձեզ և մերոց զօրաց»։ Խորենացին նախ կը նկարագրէ գաւառին այն մասն ուր եղան այն շինութիւնք. «Անատոլեայ զօրավարի ընկալեալ զհրամանն արքունի, եկեալ յաշխարհս մեր և շրջեալ ընդ բազում կողմանս մեր՝ հաճի ի գաւառին Կարնոյ իբրև ի միջոցի շինել զքաղաքն արգաւանդահող շատաջուր և բերրի. իբր միջոց վարկուցեալ զվայրսն ոչ կարի ի բացեայ ի տեղեացն՝ ուր Եփրատայ մասին ինչ բղխեն աղբիւրք ականց, և հանդարտ գնացիւք յառաջացեալ ծովանան մօրաբար երևութիւք. յորում ամբաւութիւնք ձկանց և զանազան հաւուց ճարակաւորաց, յորոց ի ձուոց միայն կերակրեալ լինէին բնակիչքն։ Եւ զեզերբք մօրին շամբք և բազմութիւն եղեգանց. և դաշտքն ունին զԹանձրութիւն խոտոց և զքաջաբերութիւն սերմանաւոր պտղոց, և լերինքն լի են երէովք կճղակաբաշխիւք և որոճայնովք. նաև զանասուն պաճարս բազմացուցանեն, մեծահասակս, քաջամարմինս և յոյրս ցուցանեն, համակեալս ի գիրութեան»։ Յետոյ կ'սկսի պատմել քաղաքին և ամրութիւններուն շինութիւնը շատ մութ ոճով։ Խորենացւոյն մթին նկարագրէն սաչափ միայն կը հասկնանք, թէ Անատոլիոս հաստատեց քաղաքը գեղեցիկ լերան մը ստորոտն, ուր մանր մանր աղբիւրք կը բխէին։ Իսկ քաղաքէն անդին դէպ ի լեռը բարձրաւանդակի վրայ շինեց Թէոդոս անուամբ բերդ, զոր Խորենացին պատուար կ'անուանէ. և որովհետև պիտի շինէր վրան բարձր աշտարակ՝ շատ խոր փորելով «անդնդալիր հաստատեաց, ասէ, զհիմունս պատուարին»։ Անատոլիոս այս աշտարակաւոր բերդէն անդին, ի հիւսիսոյ, յարևելից և յարևմտից շինել տուաւ ուրիշ աշտարակներ, ոմանք «ժայռաւոր, ասէ, իբրև զնաւացուցս», այլք «բոլորաձև»։ Իսկ քաղաքին մէջ ծածուկ ջրմուղներով բերաւ առատ ջուր. ջերմուկներուն վրայ շինեց յարկեր կոփածոյ քարերէ. լցուց քաղաքը զինուք և պահա-

պան գնդովք, և անուանեց Թէոդուպոլիս, զի յիշատակաւ քաղաքին անմահանայ անուն կայսերն.—«Եւ ու սորոտով մի գեղեցկանիստ լերինն գտեալ բազում աղբիւրս ականակիտս և մանունս բխեալ, անդ ետեղագրեաց զքաղաքն, զորով շրջափակեալ խոր փոսիւ՝ անդնդալիր հաստատեաց զհիմունս պատուարին, և ի վերայ բարձրաբերձ աշտարակս ահագինս շինեաց, յորոց զառաջինն Թէոդոս անուանեաց ի պատիւ Թէոդոսի։ Եւ ի նմանէ և անդր շինեաց աշտարակս ժայռաւորս իբրև զնաւացուցս և առանցս գոգաւոր խորշիւք, որք ընդդէմ հային լերինն։ Սոյպէս և ընդդէմ դաշտին հիւսիսոյ. իսկ ընդդէմ արևելից և արևմտից կանգնեաց աշտարակս բոլորաձևս։ Եւ ի մէջ քաղաքին ի բարձրաւանդակ վայրի մթերանոցս բազմապատիկս շինեաց. և Աւգոստիոն անուանեաց ի պատիւ Աւգոստոսի։ Եւ այլ ջուրս ընդ յոլով տեղիս ածեալ մտոյց անյայտ գնացիւք։ Եւ ելից զինու և պահապան գնդիւք զքաղաքն, և անուանեաց Թէոդուպոլիս, զի յիշատակաւ քաղաքին անմահ լիցի անունն։ Եւ ի վերայ ջերմն բղխեալ աղբերացն՝ յարկս ի վիմատաշ քարանց շինեաց» (Խոր. Անդ.)։ Բայց Կարնոյ քաղաքին վրայ աւելի ճիշդ տեղեկութիւն կու տայ Պրոկոպիոս յոյն պատմիչ Զ. դարու, ժամանակակից Յուստինիանու կայսեր (527 — 565)։ Ըստ Պրոկոպիոսի՝ գլխաւոր ամրութիւնն զոր շինեց Անատոլիոս՝ էր բերդն անուանեալ Թէոդոս ի վերայ բլրոյ, դիւրին յառնուլ, որպէս և առաւ իսկ Կաւատ արքայ Պարսից, երբ եկաւ Ամիդ քաղաքին վրայ։ Յետ սակաւուց Անաստաս կայսր (491—518) պարսպով պատեց ըզբլուրն, ուր էր Թէոդոսի բերդը, և նորոգելով քաղաքը՝ կոչեց յիւր անուն, բայց չկարաց խափանել բերդին հիմնադրին Թէոդոսի անունը։ Պարիսպը զոր շինել տուաւ Անաստաս՝ էր լայն, բաց ցած, ուստի և դիւրին էր թշնամեաց առնուլ զքաղաքն։ Պարիսպը ոչ պատուար ունէր պատսպարուելու. և ոչ խրամ, այլ ընդ հակառակն բարձր բլուր կար մօտ ի վերոյ քան զպարիսպն։ Յուստինիանոս, որ մեծամեծ նորոգութիւններ ըրաւ Հայաստանի այն գաւառներուն մէջ որ կը վերաբերէին Հռոմայեցւոց, կամելով առնել զքաղաքն անառիկ՝ խոր խրամ բացաւ զպարսպաւն զոր և ամրացուց պատուարաւ, աշտարակներն ևս ամրացունելով արար մէն մի բերդ, և այսպէս առնելով զքաղաքն զօրանիստ Հայաստան կեցող զօրաց և զօրավարաց՝ ապահով գործեց զերկիրն յարշաւանաց Պարսից։ Այժմու Կարին չէ այն հին Թէոդուպոլիս։ Ահա բանք Պրոկոպիոսի. «Իբրև Թէոդոս կայսր գրաւեաց զթագաւորութիւնն Արշակայ՝ կանգնեաց ի բլրի ուրեք բերդ, որ կոչեցաւ Թէոդոսիուպոլիս, դիւրին յառնուլ, որպէս և առաւ իսկ ի Կաւատայ արքայէն Պարսից ի խաղալ նորա ի վերայ Ամ-

դացուց քաղաքին: Յետ սակաւ միոյ Անաստաս կայսր շինեաց անդ քաղաք, պարսպաւ պատեալ զբլուրն, յորում էր բերդն Թէոդոսի, և թէպէտ յիւր անուն կոչեաց զքաղաքն՝ զանուն Թէոդոսի առաջնոյ շինչին ոչ կարաց խափանել: Պարիսպն Թէոդոսուպոլսոյ էր լայն յոյժ, այլ խոնարհ ըստ բարձրութեանն, զի էր ոտս իբրև երեսուն, ուստի և դիւրին էր առնուլ զայն թշնամեաց, մանաւանդ Պարսից, ի ժամանակս յարձակման: Չունէր ինչ ի պատսպարութիւն պատուար ինչ, և ոչ իսկ խրամ, այլ բլուր ինչ բարձր յարուցեալ կայր ի մօտոյ ի վերոյ քան զպարիսպն: Վասնորոյ Յուստինիանոս կայսր խրամ խոր առ պարսպաւն բացեալ, և զբարձրաւանդակն զայն հարթյատակ գործեալ՝ դարձոյց զտեղի նորա ի վիհս անմատոյցս և ի խոխոմս ահագինս: Եւ առ ի զպարիսպն ևս գործելոյ բարձր յոյժ և անմատոյց՝ ետ շինել ի նմա ամրութիւնս պէս գունակ այնց՝ զորս տուեալ էր շինել ի Տարա քաղաքի: Ի պարսպի անդ եթող միջոցս բացեալս, որչափ ինչ բաւական էր ի ձգել զէնս. շուրջանակի ածեալ սրահ քարակերտ՝ ի նմա ևս եթող միջոցս բացեալս. կանգնեաց և արտաքուստ այլ պարիսպ երկրորդ, և զիւրաքանչիւր յաշտարակացն դարձոյց ի մէն մի բերդ ըստ նմանութեան պարսպին Տարայի: Եւ այսպէս կարգեալ զտեղին զօրանիստ ամենայն զօրաց և զօրավարաց որ ի Հայս՝ կացոյց զազգն Հայոց անքոյթ յարշաւանաց Պարսից» (Պրոկ. գիրք Գ. շինուած. Գլ. Ե.):

**26**. Դիտելու արժանի է, որ Կարնոյ նկարագիրն առ Խորենացւոյն կը թուի գրուած յետոյ քան զԵ. դար, քանզի կը յարմարի մանաւանդ շինութեանն Յուստինիանու նկարագրելոյ Պրոկոպիոսէ, քան շինութեանցն Թէոդոսի և Անաստասայ: Բայց գրաւիչ թագաւորութեանն Արշակայ չէր Թէոդոս փոքր, ինչպէս կը թուի կարծել Պրոկոպիոս, այլ Թէոդոս մեծ:

**27**. Արտաշիր, այն է Արտաշէս, որդին Վռամշապհոյ, ասէ Խորենացին յառաջ տանելով զիւր պատմութիւն, վարելով անառակ կեանս՝ եղաւ ատելի նախարարաց, որք յետ ամբաստանելոյ զնա առ Սահակայ, երբ գտան զսա անհաւան իւրեանց խորհրդոյն, որ էր մատնել զմանուկ թագաւորն՝ արքային Պարսից, և խնդրել պարսիկ իշխան՝ իրենց համամիտ երիցաւ միով Սուրմակ անուն գացին առ Վռամ բողոքել զԱրտաշրէ՝ թէ անարժան էր ի թագաւորել, և զՍահակայ՝ թէ միտեալ է ի Յոյնս.—«Բայց թագաւորն Հայոց Արտաշիր անհուն սկսաւ ողողանել յանառակ ցանկութիւնս, մինչև տաղտկանալ ի նմանէ ամենայն նախարարացն: Որոց եկեալ առ մեծն Սահակ զբողոք բարձին, հրաւիրելով և զնա յօգնականութիւն ինքեանց՝ չարախօսել առ արքային Պարսից և ի բաց ընկենուլ ըզ-

թագաւորն իւրեանց, և պարսիկ անել ունող աշխարհիս: Այլ նա ասէ. Ոչ առ սուտս ունիմ զձեզ. իմ իսկ լուեալ է այդպիսի աղէտս ամօթալեաց, և բազում անգամ յանդիմանեալ՝ ուրացաւ: Եւ արդ պարտ է փոքր մի տանել թերութեան առնն մինչև զեւս իրացն խորհել մարթասցուք կայսերըն Յունաց Թէոդոսիւ, և ոչ անօրինաց մատնել ի ծաղր և յայպանումն: Եւ նոքա ոչ կամէին. այլ ջանային համախորհուրդ զնա իւրեանց առնել: Այլ նա ասէ. Ինձ քաւ լիցի մատնել գայլոց զիմ մոլորեալ ոչխար, և ոչ պատել զբեկեալն կամ զհիւանդացեալն՝ այլ գահավէժ առնել: Զի թէ էր հաւատացեալ թագաւորի առաջի՝ փութայի և ոչ յապաղէի, յուսալով զկանգնումն գլորելոյն. այլ հեթանոսաց, յաւաւել կործանումն՝ ոչ առնում յանձն, ըստ այնմ, թէ Մի մատներ գազանաց զանձն խոստովանող քեզ: Քանզի դրոշմեալ է աւազանաւն, թէպէտև անառակ է. պոռնիկ է, այլ քրիստոնեայ է. գինացեալ է մարմնով, այլ ոչ անհաւատ հոգւով. զեղխ է վարուք, այլ ոչ կրակապաշտ. տկար է ի կանայս, այլ ոչ ծառայէ տարերց: Եւ զիարդ լինիցի այդ, փոխանակել զիմ ախտացեալ ոչխար ընդ առողջ գազանի, որոյ առողջութիւնն է մեզ պատուհաս: Իսկ նախարարացն զմտաւ ածեալ, իբր թէ խաբկանօք իցէ գործն, յապաղել զնոսա զի զթագաւորն պատրաստեցուսցէ՝ ասեն ամենեքեան. Վասն զի ոչ համակամեցար մեզ չթագաւորել նմա՝ արդ և մեք կամեսցուք և քեզ չքահանայանալ մեզ: Եւ միաբանեալ ամենեքին՝ անցին առ արքայն Պարսից Վռամ հանդերձ Սուրմակաւ ոմամբ արծկէացի փառամոլ երիցու, չարախօսել զարքայէն իւրեանց զԱրտաշրէ, և զմեծէն Սահակայ՝ զՅունովք գլեալ խորհրդովն» (Խոր. Գ. ԿԳ.):

**28.** Արտաշիր և Սահակ անդէն կը կոչուին ի դուռն ի Վռամայ: Ի Սահակայ կը խնդրուի ամբաստանել զԱրտաշիր. բայց նա չառնուր յանձն, և ոչ թախանձանք հազարապետին Արեաց, որ էր Սուրենեան Պահլաւ, ուստի և ազգական Սահակայ ըստ աւանդութեան (իբրև սերունդ Անակայ), կարացին հաւանեցուցանել զնա յայն: Միայն չթուիր հաւանական Սահակայ «անմաքրասէր» կոչելն Պարսից կրօնքն ի խօսելն ընդ Սուրենայ.—«Յայնժամ արքայն Պարսից Վռամայ կոչեցեալ ի դուռն զթագաւորն Հայոց զԱրտաշիր և զմեծն Սահակ՝ խնդրէին ի նմանէ ամբաստանել զԱրտաշրէ. և նա հրաժարէ բնաւ ասել ինչ չար կամ բարի: Ապա հրամայէ հազարապետին Արեաց որ է Սուրենեան Պահլաւ, զի հաւանեցուսցէ զնա խրատու սիրելութեան որպէս զազգային: Եւ նորա անկեալ ի բանս հրապուրանաց ասելով. Զի արիւն իմ ես և հարազատութիւն՝ զբարին քո խօկալ ասեմ. եթէ միայն այժմ միաբանեսցիս ընդ նախարարացդ՝ մեծարեալ լինիցիս յարքայէն Պարսից, և զթոռն քո

Վարդան կարգեսցէ ի վերայ Հայոց զուգահաւասար թագաւորին և համապատիւ։ Այլ նա ոչ առնոյր յանձն ասելով. Զիա՞րդ վասն սնափառութեան և իշխանասիրութեան չարաբանիցեմ զընկերբ, կամ ընդէր ձեր այդպիսի յօժարութիւն ընկենուլ զԱրտաշիր. զի ես զնորա ապըստամբութեան ինչ խորհուրդ ոչ գիտեմ. ապա եթէ վասն անառակ ինչ վարուց, զոր նոքա ամբաստանեննն՝ պատուոյ արժանի է ի ձէնջ ըստ ծերում՝ անմաքրասէր օրինացդ, թէպէտ ըստ մերումն դատապարտի. բայց սակայն լինէն ոչինչ էք լսելոց ամենևին» (Խոր. Գ. ԿԴ.)։

**29.** Վռամ զայրանալով կը կազմէ ատեան, և առանց ունկըն դնելոյ բանիցն Արտաշրի և լսելով միայն ամբաստանութեանցն Սուրմակայ, որ գաղտ ի բանի էր ընդ Նախարարսն՝ դատապարտելով զԱրտաշիր կ'առնու ի նմանէ զթագաւորութիւնն, որպէս և զկաթողիկոսութիւնն ի Սահակայ. երկոցունց ևս ինչք կը գրաւուին յարքունիս, և Սուրմակ կ'առնու կաթողիկոսութիւնը, զոր հազիւ տարի մը միայն վարելով կը մերժուի Նախարարներէն, ինչպէս նաև յաջորդ նորա Բրքիշոյ ասորի, որ եկաւ հրամանաւ Վռամայ, այր զեղխ և զօշաքաղ, տիրող վիճակացն, որ և ունէր կանայս ի սպասու,—յետ երեքամեայ աթոռակալութեանն։ Փոխանակ թագաւորի կը ղրկուի մարզպան պարսիկ Վեհմիհրշապուհ անուն։

Այսպէս առ տկարութեան կամ մանաւանդ առ անմիաբանութեան Նախարարաց Հայոց բարձաւ մեծարոյ թագաւորութիւնն Արշակունեաց, տևելով իբր 580 տարի, լեալ խաղալիկ ի ձեռս քաղաքականութեան երկուց հզօր ոսոխ տէրութեանց—Հռոմայեցւոյն և Պարսկին.—«Ապա զայրացեալ Վռամայ, ի մեծի հրապարակին արարեալ քննութիւն, և ոչ դնելով ունկն Արտաշրի՝ յօժարութեամբ լսէր չարախօսացն, առաւել ևս յոյժ աղտեղութեան բանիցն Սուրմակայ։ Քանզի զաթոռ եպիսկոպոսապետութեան էր նմա նախարարացն խոստացեալ, թշնամասիրացն և ոսոխասիրացն, վասնորոյ ինքնասիրութեամբ պատրաստեաց զլեզուն իւր սուսեր՝ սատակիչ։ Մինչև հրամայեաց Վռամ առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշրէ, և անդէն արգելուլ զնա, և զամենայն ինչս ազգի նորա ունել յարքունիս. նոյնպէս և զմեծն Սահակ, և զտունն կաթողիկոսութեան ունել յարքունիս, և տալ նորա փոխանակ յաթոռ եպիսկոպոսութեանն Հայոց զՍուրմակն զայն։ Եւ մեծապարգև զնախարարսն արձակեալ պարսիկ մարզպանաւ, որում անուն էր Վեհմիհրշապուհ։ Բայց Սուրմակայ ոչ աւելի տևեալ քան զմի ամ՝ ի նոցին նախարարացն հալածեցաւ յաթոռոյն. որ ապա զիւրոյ գաւառին զԲզնունեաց զեպիսկոպոսութիւնն ի Պարսից արքայէն եգիտ ունել ազգաւ»։



## ԳԼՈՒԽ Գ.

### ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ Բ. ԴՊՐՈՒԹԵԱՆ ԽՈՐԵՆԱՑՒՈՅՆ, ԺԴ. ԳԼԽԷՆ ՄԻՆՉԵՒ Ի ՎԱԽՃԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՆ։

Մինչեւ ցարդ, ի Տիգրանայ մեծէ մինչեւ ցանկումն հարստութեանն Արշակունեաց (90 ն. ք. գՔր.—428 յ. Քր.), տուինք հայ ազգին պատմութիւնն արտաքին և ազգային ժամանակակից աղբիւրներէ։ Բայց կայ միւս եւս աղբիւր ազգային, այն է Խորենացին, կամ լաւ եւս ասել՝ ուրումն Մովսիսի Խորենացւոյ անուամբ ծանօթ պատմութիւն, որ բազմօք կը տարբերի ցարդ յիշուած ժամանակակից աղբիւրներէն, կամ հակառակ է նոցա։ Եւ որովհետեւ այս պատմութեան, թէպէտ չէ ժամանակակից, մեծ յարգ կ'ընծայուի, նա մանաւանդ համարուած է իբրեւ պատգամ կամ վճիռ մեր հնագոյն պատմութեան անգամ վերաբերեալ որեւիցէ վիճի կամ խնդրոյ՝ հարկ է մեզ բերել ի մէջ այն պատմութեան մանաւանդ այն կէտերն, որ տուած են և կու տան յիրաւի տարակոյս անաչառ և լուսաւորեալ քննադատի։ Որ և իցէ պատմութենէ կասկածել, և այնչափ առաւել որչափ հին է պատմութիւնն՝ իրաւացի է և պարտք ամէն անաչառ պատմչի, որոյ պաշտօնն պարտի լինել գտնել եթէ ոչ ճշմարտութիւնը՝ գէթ հաւանականութիւնը. և որովհետեւ այս ճշմարտութիւնն կամ հաւանականութիւն կախեալ է մեծաւ մասամբ պատմութեան աղբիւրներուն բնութենէն՝ մեր առաջին և կարեւոր գործն է տեսնել, թէ ինչ աղբիւրներէ կը բխէ այս պատմութիւնն։

Մովսիսի Խորենացւոյ, յոր իբր վերադիր յաւելուած է նաեւ Քերթող կամ Քերթողահայր անունն, անձին վրայ ժամանակակից աղբերէ չունինք ամենեւին տեղեկութիւն, բաց իւր պատմութեան ճակատէն—«Մովսիսի Խորենացւոյ պատմութիւն Հայոց», որ չունի մեծ պատմական զօրութիւն։ Փարպեցին, Ե. դարու պատմիչ, չըյիշեր ամենեւին ոչ զանուն գրոյն, և ոչ զհեղինակին, մինչ ուրիշ հայ պատմչաց վրայ որ յառաջ են քան զինք, ինչպէս Ագաթանգեղոսի, Բուզանդայ, Կորեան՝ կը խօսի յանուանէ և երկար։ Խորենացւոյն վրայ մեր այս մասին մէջ խօսուեցաւ արդէն. հոս հարկ

է դարձեալ յաւելուլ ինչ ինչ։ Յիշուելու կարեւորագոյն կէտն է ժամանակ պատմագրութեան Խորենացւոյն։ Եթէ ընդունինք իբրեւ ճշմարիտ, թէ պատմութիւն Խորենացւոյն գրուեցաւ ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ մարզպանի՝ հարկ է ընդունել, թէ գրութեան թուականն չկարէ լինել յետոյ քան 480 կամ 482, որ է թուական մահուանն Սահակայ Բագրատունւոյ։ Ուրիշ կողմանէ յայտնի է, թէ այն պատմութիւն չկարէ լինել գրուած յառաջ քան զամն 440 և 441, որ է թուական Սահակայ և Մեսրոպայ մահուան, ուր կը հանգուցանէ հեղինակն զպատմութիւն իւր։ Եւ որովհետեւ ըստ իւրում վկայութեան հեղինակն էր ծերացեալ, այսինքն գոնէ 70 կամ 75 ամեայ, երբ կը գրէր պատմութիւնը՝ ապա էր հասակակից իւր վարդապետներուն, Սահակայ և Մեսրոպայ։ Այս հաշիւ, ինչպէս տեսանք՝ կը հետեւի ի համաձայն պատմութեան Խորենացւոյն, բայց կու գայ հակառակ աւանդութեանն, որ կը դնէ զԽորենացին Սահակայ և Մեսրոպայ կրտսերագոյն աշակերտներէն, ուստի և մատենագիր առաջնոյ կիսոյ Ե. դարուն. բայց լինել կրտսերագոյն աշակերտ, միանգամայն հասակակից իւր վարդապետներուն՝ կը թուի տարօրինակ։ Ապա կա՛մ թուական մատենագրութեան պատմութեան Խորենացւոյն ըստ վերոգրեալ հաշուին է մերժելի, և կամ աւանդութիւնն. ըստ մեզ երկոքին ևս։

Եւ ոչ՝ լինելն պատմութեան Խորենացւոյն գրուած ի խնդրոյ Բագրատունւոյ ասպետի՝ ունի հաստատութիւն առաջի լռութեան Փարպեցւոյն, որ չգիտէր ո՛չ Մովսէս Խորենացի պատմիչ յիւրում դարու, և ոչ պատմութիւն Հայոց յօրինեալ ի նմանէ ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, որում ի մօտոյ ծանօթ էր Փարպեցին, ինչպէս այլուր ասացաւ։

Միւս ևս խնդիր է, թէ պատմութիւն Խորենացւոյն հասա՛ծ է մեզ անարատ իւր սկզբնական ձեւովն, թէ կրած է յաւելուած կամ փոփոխութիւն։ Երրորդ դպրութեան ԿԱ. գլխոյն վերջին մասը, «բայց քանզի—վերաբանութեան», ԿԲ. գլուխն ամբողջ, ինչպէս նաև Ողբը՝ են կասկածելի, և հաւանականապէս այլոց և յետնագոյն գրչի գործ։ Զիարդ և իցէ՝ թողլով այս կնճռոտ խնդիրներն և նկատելով զգրուածն այնպէս ինչպէս կը գտնուի այսօր՝ տեսնենք նախ, թէ ինչ աղբիւրներէ կ'առնու Խորենացին։ (ԶԽորենացւոյն տես և զԱ. մասն պատմութեան մերոյ, էջ 88—92, և այլուր)։

Զառաջին աղբերէ Խորենացւոյն, այն է զՄարիբասայ, որմէ ասէ Խորենացին թէ կ'առնու իւր պատմութիւնն մինչև Արտաշէս (Ա. ըստ Խորենացւոյն)՝ խօսուեցաւ մեր պատմութեան առաջին մասին մէջ ըստ բաւականին (88—202). նոյնպէս զԱփրիկանոսէ,

որ է երկրորդ աղբիւր նորա, որպէս ասէ, յԱրտաշիսէ մինչև ցՏրդատ (Խոր. Բ. Ժ.)՝ խոստացաւ բաւական մեր պատմութեան այն մասին մէջ, (էջ 264—265)։ Հոն ցուցուած պատճառներուն համար չենք կրնար ընդունել, թէ Խորենացին ունեցաւ զԱփրիկանոս, և ոչ՝ թէ Ափրիկանոս առաւ յԵդեսիոյ դիւանէն, այսինքն մատենադարանէն, ուր Խորենացին կ'երազէ լինել մեր առաջին թագաւորաց գործերն մինչև ցՏրդատ։ (Խորենացւոյն ճարտարմտութիւնն իմանալու համար համեմատէ Ա. Ը. ընդ Բ. ԼԸ.)։ Հոս կը յաւելունք սա ևս, թէ եթէ Ափրիկանոս քաղած էր իւր ժամանակագրութիւնը մեհենական պատմութենէն Սինոպայ (Խոր. Բ. Ժ), որ էր մայրաքաղաք Պոնտոսի՝ չէր կրնար զՄիհրդատ Է, զանուանին և զհզօր ի թագաւորս Պոնտոսի, կոչել բդեշխ Վրաց։ Այնպիսի քաղաքի մեհենական պատմութեան մէջ հարկաւ յիշուած էին Միհրդատայ երկար պատերազմներն ընդդէմ Հռոմայեցւոց, դաշնակցութիւնն ընդ Տիգրանայ և ուրիշ շատ պարագաներ, որոց անգէտ է մեր պատմութեան հայրն։ Կը հարցունենք նաև, թէ Խորենացին ինչպէս գտաւ Ափրիկանոսի գրոց մէջ, որ էր համառօտ ժամանակագրութիւն և ոչ ընդհանուր պատմութիւն, եօթն հայ թագաւորաց պատմութիւնը։ Ափրիկանոսէ առաւ Խորենացին, և Ափրիկանոս ի դիւանէն Սինոպայ, թէ Միհրդատ էր քեռայր Տիգրանայ։ Ուստի յիրաւի է տարակուսել, թէ Խորենացւոյն պատմութեան այս կարկատուն մասը, որ կ'ընծայուի մեզ իբրև առնուած Ափրիկանոսէ՝ ոչ այլ ինչ է եթէ ոչ հաւաքածոյ աննշան աղբիւրներէ, կամ մանաւանդ, որ աւելի հաւանական է՝ քաղուած Յովսեպոսէ հանդերձ թերութեամբք նորա, կրճատելով կամ փոխելով ինչ ինչ, որ չէր համաձայն Խորենացւոյն դիտման, որ էր ցուցանել զՏիգրան անյաղթ և գրեթէ միահեծան տէր յառաջակողման Ասիոյ։ Արդարև Տիգրան էր յայնժամ արքայից արքայ, տէր ո՛չ Հայաստանի միայն, այլև Ասորւոց, և ունէր գոնէ վերին իմն իշխանութիւն Փոքուն Ասիոյ միոյ մասին (Կապադովկիոյ) վրայ. սակայն պարտ է խոստովանել ժամանակակից պատմութեան առջև, թէ շատ պարագաներ ստիպեցին զնա տեղի տալ բուռն և յամառ զօրութեան հռոմէական աշխարհակալութեան։

Ապաքէն զարմանալի է, որ Խորենացին Տիգրանայ պէս հզօր և ըստ Կիկերոնի արդարև «մեծ» թագաւորի մը պատմութիւնը կը համառօտէ ինը մանր գլուխներու մէջ այնպէս կրճատ և խառն ի խուռն՝ որ չարժեր ամենևին բառ առ բառ յիշել։ Բաւական կը համարինք դնել Լանկլուայի դիտողութիւնը Խորենացւոյն պատմութեան այս մասին վրայ։ Հայասէր գաղղիացին, որ շատ անգամ

խնայելով և լուսւթեամբ կ'անցնի մեր պատմութեան հօր թերութիւններն՝ հոս չհամբերելով «Այս (ԺԵ.) գլխոյն մէջ համառօտեալ դէպք զՏիգրանայ, զՄիհրդատայ և զորդւոյ նորա երկար կը պատմուին, ասէ, յոյն և լատին պատմիչներէ, այնպէս մանր մասամբք՝ որ կը ցուցնեն յայտնապէս, թէ Մովսէս Խորենացի յոյժ քննած է պատմական օտար յիշատակներ իւր երկրին պատմութեան վրայ։ Աղբիւրք յորոց կ'առնու նա իւր տեղեկութիւններն՝ էին կամ հակիրճ յոյժ կամ անստոյգ, և պատմութիւն նորա ունի սխալներ, զորս մի ըստ միոջէ նշանակել տղայութիւն է։ Բաւական է յոյն և լատին ժամանակակից պատմագրաց դիմել տեսնելու համար, թէ չէ ամենեւին ճիշդ պատմութիւն Մովսիսի։ Ստուգագոյն աղբիւրք են Ստրաբոն, Ապպիանոս, Դիոն Կասսիոս, Եւտրոպիոս, Յուստինոս, Կիկերոն, Պլուտարքոս, Վելլէոս Պատերկուղոս, որ կու տան մանր տեղեկութիւններ Տիգրանայ մանկան, ապստամբութեան նորա ընդդէմ հօրն, փախստեան նորա ի Հռոմ, այլովքն հանդերձ, դէպք՝ զորովք բոլորովին լուսւթեամբ կ'անցնի պատմիչ մեր» (Վիք. Լանկլ. Ժողովածոյ հին և նոր պատմ. Հայոց. Հտ. Բ. էջ 89, Ծան.)։ Ընթերցողք մեր չունին ամենեւին պէտս դիմելոյ յիշեալ աղբիւրներուն. մեք նոցա ընտիրներէն և մերձաւորագոյններէն ժամանակաւ՝ առած ենք ինչ որ կարեւոր էր ի վերայ ծագման Տիգրանայ, թագաւորելուն նորա և զօրանալուն, տիրելուն Ասորւոց երկրին, այն երկրին ժողովրդեննէն հրաւիրեալ, դաշնակցութեան նորա ընդ խնամւոյն իւրում Միհրդատայ Եւպատորի, երկար պատերազմներուն Հռոմայեցւոց դէմ իբրև զօրավիգն նորա, ի վախճանի տեղի տալուն Պոմպէի, խոնջեալ և պարտասեալ ծանր և անդուլ պատերազմներէ և ծերութենէ։

Խորենացին Բ. դպրութեան ԺԴ. գլխով կ'սկսի Տիգրանայ պատմութիւնն այսպէս. «Յետ Արտաշիսի առաջնոյ թագաւորէ Տիգրան որդի նորա... և ժողովեալ զզօրս Հայոց՝ ընդդէմ երթայ զօրացն Յունաց, որք յետ մահուանն Արտաշիսի հօրն իւրոյ և ցրուելոյ զօրացն՝ հետամուտ լեալ դիմեալ գային յաշխարհս մեր։ Որոց ընդդէմ պատահեալ Տիգրանայ՝ տրգելեալ ի վերջ նահանջէ։ Եւ ի քեռայր իւր Միհրդատ հաւատացեալ զՄաժաք և զհոգս Միջերկրայցն, և զօր բազում թողեալ նմա՝ դառնայ յաշխարհս»։ Խորենացին կամ աղբիւր նորա կը թուին բոլորովին անգէտ Փոքուն Ասիոյ և Յունաց պատմութեան նախ քան զՔր. Ա. դարուն գրեթէ ամբողջ առաջին կիսուն մէջ։ Այս երկիրներուն պատմութիւնն, ինչպէս կ'աւանդեն ժամանակակից պատմիչք՝ չթողուր ընդունել յարձակումն ոչ յարեւմտից յարեւելս և ոչ յարեւելից յարեւմուտս յառաջ

քան զՄիհրդատ Ե. թագաւոր Պոնտոսի։ Ուստի և չէ պատմական ոչ Արտաշէսի ուրումն հայ թագաւորի աշխարհակալութիւնն ի Փոքր Ասիա և ի Յունաստան, ոչ Յունաց կողմանէ արշաւանք Հայոց վրայ և ոչ Տիգրանայ կողմանէ զօրօք ընդդիմութիւն այնպիսի արշաւանաց։ Եւ աւելի հակառակ է ժամանակակից պատմութեան՝ զՄիհրդատ մեծ հզօր թագաւորն Պոնտոսի դնել Տիգրանայ կողմանէ կարգեալ վերակացու Փոքուն Ասիոյ, որպէս թէ այս թերակղզին էր ընդ իշխանութեամբ Տիգրանայ։ Տիգրան թագաւորած է իբր 95-ին նախ քան զՔր., այսինքն ամօք ինչ յետոյ քան զսկիզբն պատերազմին Միհրդատայ ընդ Հռոմայեցիս։

Միհրդատ 123-էն հետէ Ն. Ք. զՔր., այն է իւր թագաւորութեան սկիզբէն, կը պատրաստուէր նուաճել զՓոքրն Ասիա և հանել զՀռոմայեցիս ի թերակղզւոյն, ուր մուտ գտած էին նոքա 180-ին և ունէին ազդեցութիւն մեծ, մանաւանդ թէ վերին իշխանութիւն Փոքուն Ասիոյ մանր մանր տէրութեանց վրայ։ Միհրդատ յետ նուաճելոյ լռելեայն այլ և այլ հիւսիսային բարբարոս ցեղեր, գումարելոյ իբր 300,000-է կազմեալ բանակ, և առնելոյ իւր դաշնակից զթագաւորն Հայոց, զհայրն Տիգրանայ, որ նոյնպէս կը կոչուէր Տիգրան ըստ Ապպիանու՝ սկսաւ ի գործ դնել զիւր խորհուրդն 88-ին, այսինքն երբ Կասսիոս, մին ի գաւառանաց Կեսարու, էր փոխանակ բդեշխի յարևելս, իմա իբր 7 ամօք յետոյ քան զթագաւորելն Տիգրանայ, ընդ որում նորոգած էր Միհրդատ դաշնագրութիւնը, և էր, ըստ միաբան վկայութեան յոյն և հռոմայեցի պատմագրաց՝ աներ Տիգրանայ և ոչ քեռայր նորա։ Այսպէս կ'սկսի 88-ին Միհրդատայ արշաւանն։ Հռոմայեցիք կը վանին յԱսիոյ, Միհրդատայ զօրավարն Արքեղայոս կ'անցնի 150,000 զօրօք Հելլեսպոնտոս և կը մտնէ Յունաստան. Յոյնք կ'ապստամբին, բայց Սուղղա գալով (87) կը վանէ զզօրսն Միհրդատայ, և Յոյնք կը նուաճին։ Այսպէս խորհուրդն Միհրդատայ չյաջողիր։ Հռոմայեցիք կը մտնեն միւսանգամ յԱսիա, Միհրդատ կ'ստիպուի խօսել հաշտութիւն ընդ Սուղղայի (84)։ Յետ մահուն Սուղղայի (78) Միհրդատ կը նորոգէ պատերազմը. Ղուկուղղոս կը ղրկուի Միհրդատայ դէմ. Միհրդատ այս անգամ ևս յաղթուելով (72, 71)՝ կ'ապաւինի առ Տիգրան. Ղուկուղղոս կը պահանջէ ի Տիգրանայ տալ ի ձեռս զՄիհրդատ։ Տիգրան, տէր Հայաստանի և յաղթող Պարթևաց, որ թողած էին նմա Միջագետաց հիւսիսային մասն, տէր նաև Ասորւոց (Սելևկեանց) երկրին՝ կը մերժէ Ղուկուղղոսի պահանջումը։ Ղուկուղղոս սակաւ զօրօք կը մտնէ Հայաստան (69)։ Տիգրան լսելով զարշաւանն Ղուկուղղոսի՝ կու գայ բազմութեամբ զօրաց Ասորւոց երկրէն, կու տայ

ճակատ (68), այլ չյաջողիր. Տիգրանակերտ կ'առնուի: Ղուկուղղոս կը խորհի առնուլ զԱրտաշատ, բայց իւր զօրաց դժգոհութենէն կ'ստիպուի դառնալ ի Փոքր Ասիա, յետ առնլոյ զՄծբին (67), որ էր քաղաք գանձուց Տիգրանայ: Յետ Ղուկուղղոսի Պոմպէոս կը կատարէ Պոնտոսի և Հայոց գործը, զոր երկու մեծ զօրավարք, Սուղղա և Ղուկուղղոս, գիւրացուցած էին: Միհրդատ կը մեռնի. Պոնտոս լինի նահանգ հռոմէական (64). գրեթէ նոյն ժամանակ Տիգրան կ'ստիպուի հրաժարել իւր բոլոր երկիրներէն Հայաստանէ դուրս (Ասորւոց երկրէն և ի Կապադովկիոյ), ընդունելով Հռոմայեցւոց վերին իշխանութիւնն իբրև պատուար Պարթևաց դէմ, ընդդէմ որոց կ'ուղղուէր Հռոմայեցւոց արշաւանն:

Այս պատմութեան մէջ, որ, որչափ և ի նպաստ Հռոմայեցւոց գրուած համարինք, է ժամանակակից և ստուգագոյն՝ չունին ամենևին տեղի դէպք պատմեալք ի Խորենացւոյն Բ. դպրութեան ԺԴ. գլխոյն առաջին մասին մէջ: Խորենացւոյն Բ. դպրութեան ԺԴ. գլխոյն երկրորդ հատուածն է մեհեաններու շինութեան, դից պատկերներուն և Բագրատունեաց հոլածման վրայ: Զայսմանէ տես մեր Պատմութեան առաջին մասն, էջ 170—179. իսկ դից պատկերներուն վրայ խօսեցանք արդէն: Հոս սաչափ միայն կը յաւելունք, թէ եթէ այնպիսի պատկերներ բերուած են ի Յունաց՝ այս եղած է Միհրդատայ արշաւանաց ժամանակ ի Յոյնս, այն է 87-ին ուստի և առ Տիգրանաւ որ էր դաշնակից նորա: Չէ անհաւանական, թէ Տիգրան առընթեր հին դիցապաշտութեան Հայոց կամեցաւ տնկել յունական Պառնասն, և այս նորաձևութիւնն կը թուի մանաւանդ լեալ պատճառ դժկամակութեան Վահունեաց, որ էին հին քրմական ցեղ Հայոց ուստի և անկան քրմութենէ, քան կանգնելն նոցա զարձանն Հերակղի յիւրեանց գիւղն յԱշտիշատ, համարելով զնա զիւրեանց նախնին Վահագն: Այսպէս նոր քրմական յոյն ցեղ փոխանակեց զՎահունիս. ուստի և կը գտնենք, ի գարձին Հայոց առ Լուսաւորչաւ՝ քրմական ցեղէն ի պաշտօն եպիսկոպոսութեան կարգեալ անձանց անուններն գրեթէ համակ յունարէն, ինչպէս Աղբիանոս, Եւթաղիոս, Եւսեբիոս, Ագապէս, Արտիթէս, Անտիոքէս, Տիրիկէս, Կիւրակոս (Ագաթ. ԾԻԱ ):

Զարմանալի է որ Խորենացին Տիգրանայ իբր ութևտասնամեայ տէրութիւնն Ասորւոց երկրին՝ կ'իջեցունէ լոկ վրէժխնդրական արշաւանի.—«Եւ նոյնհետայն զիմէ յաշխարհն Պաղեստինացւոց՝ վրէժ պահանջել ի Պտղոմայիդ Կղէոպատրայ յաղագս Դիոնիսի որդւոյ նորա առ հայր իւր յանցանաց: Առեալ գերի բազում և ի Հրէից՝ նստի շուրջ զՊտղոմայիդ քաղաքաւ: Իսկ դշխոյն Հրէից Աղեքսան-

դրիս որ և Մեսաղինայ, որ էր լեալ կին Աղեքսանդրի, որդւոյ Յովհաննու, որդւոյ Շմաւոնի, եղբօր Յուդայ Մակաբէի, որ զայնու ժամանակաւ ունէր զթագաւորութիւնն Հրէից, ինչս բազումս տալով դարձոյց զնա անտի։ Քանզի էր (Տիգրանայ) լուեալ և համբաւ, թէ Վայկուն ոմն անուն յելուզակ խռովէ զերկիրն Հայոց, զլեառն ամուր կալեալ, որ և այժմ յանուն յելուզակին կոչին Վայկունիք» (Խոր. Բ. ԺԴ.)։ Խորենացին կ'առնու զայս պատմութիւն ոչ թէ Ափրիկանոսի ժամանակագրութենէն, ուր թերևս և ոչ իսկ կը յիշուէր այս, այլ Յովսեպոսէ։ Ահա բանք Յովսեպոսի. «Զայնու ժամանակաւ ազդ եղև, եթէ Տիգրան արքայ Հայոց մտեալ էր յԱսորիս հինգ հարիւր հազար արամբք և թէ գալոց էր ընդ հուպ ի Հրէաստան։ Այսպիսի վտանգ մեծ և անակնկալ զարհուրեցոյց զդշխոյն Աղեքսանդրա և զհամօրէն թագաւորութիւնն։ Առաքեաց նա առ թագաւորն (Տիգրան) ընծայս մեծամեծս ի ձեռն հրեշտակաց, որ գտին զնա պատաղեալ պաշարմամբ Պտղոմայիդայ։ Տիկինն Սեղենէ, այլով անուամբ Կղէոպատրա, որ թագաւորէր յայնժամ յԱսորիս՝ յորդորեաց զհպատակս իւր քաջութեամբ զդէմ ունել այնմ՝ որ գայր յիւր վտարել զերկիրն։ Հրեշտակք Աղեքսանդրայ զամենայն ջան յանձին կալան ածել զՏիգրան յաղերս վասն նորա և ազգին։ Տիգրան ընկալաւ զնոսա քաղցրութեամբ, և արձակեաց յուսով մեծաւ։ Այն ինչ առեալ էր նորա զՊտղոմայիդ՝ լուաւ եթէ Ղուկուղղոս որ զհետ մտեալ էր Միհրդատայ և չէր հասեալ նմա, զի խոյս տուեալ էր նա ի Վիրս՝ մտեալ էր ի Հայս և աւերէր գերփէր զերկիրն. այս համբաւ ետ Տիգրանայ դառնալ յետս» (Յովս. Նախն. պատմ. Հր. ԺԳ. 14)։ Զարմանալի է սակայն, որ Ղուկուղղոս,—դիտմամբ թէ յանդէտս՝ չենք գիտեր—կը փոխուի առ Խորենացւոյն ի Վայկուն յելուզակ։ Պատճառ գալուն Տիգրանայ ի վերայ Կղէոպատրայ յայտնի է Յովսեպոսէ, վասն զի հակառակ էր նա Տիգրանայ. Խորենացին կ'ընծայէ զայն յանցանաց Դիոնիսիոսի, որդւոյ Կղէոպատրայ, Տիգրանայ հօրը դէմ, առանց յայտնելու թէ ինչ էր յանցանքը։ Սակայն գիտենք այլուստ, թէ Կղէոպատրա չունէր որդի Դիոնիսիոս անուն. Անտիոքոս Դիոնիսոս էր որդի Անտիոքոսի Գրիւպոսի. Կղէոպատրայի որդին էր Անտիոքոս Ասիացի, մանուկ և անկարող յանցաւոր գտնուելու Տիգրանայ հօրը, որ այն թուականէն (70) քսան և թերևս աւելի ամօք յառաջ մեռած էր։

Գալով Պտղոմայիդ կամ Սեղենէ Կղէոպատրայ՝ գիտել պարտ է, զի Պտղոմայիդ, այն է Աքք կամ Սէն Ժան տ'Աքր, այժմու Աքեա, էր քաղաք եգիպտացի (Պտղոմեան) թագուհիներուն որ կ'երթային յԱսորիս։ Սեղենէ Կղէոպատրա, որ էր դուստր Պտղոմեայ Փիսկոնի,

յետ այլևայլ ամուսնութեանց եղաւ՝ կին Անտիոքոսի բարեպաշտի, որդւոյն Անտիոքոսի Կիզիկեցւոյ, և ունեցաւ երկու որդի, Անտիոքոս Ասիացի և Սելևկոս Կիպրիոսակտէս։ Սոքա էին ժառանգ թագաւորութեանն Սելևկեանց, և գլխաւոր քաղաք նոցա էր յայնժամ Դամասկոս։ Յետ մահուն հօր նոցա, մինչդեռ տղայքն էին անչափահաս՝ մայր նոցա էր յանձանձիչ (80—70,) և յերեսաց Տիգրանայ, յորմէ հետէ մտաւ նա յԱսորիս՝ ապաւինեցաւ յիւր քաղաքն Պտղոմայիդ, զոր եկաւ պաշարեց Տիգրան։ Քաղաքն առնուեցաւ, և ձերբակալ եղաւ թագուհին, և սպանուեցաւ յետոյ։ Այս ժամանակն էր (70) որ Ղուկուղղոս մտաւ Հայաստան, և Տիգրան լսելով զայս՝ աճապարեց զօրօք գալ ընդդէմ նորա։ Խորենացին որ չկամիր գիտել զՂուկուղղոս՝ Վայկուն անուն յելուզակի ուրուք յարձակման կու տայ Տիգրանայ աճապարանօք դարձն ի Հայս։ Թերևս կար յայնժամ նաև հիւսիսային վայրենի ցեղի մը կողմանէ յարձակումն Արձախու Վայկունիք կոչուած լեռնային գաւառը. բայց Տիգրանայ այսպիսի մեծ զօրութեամբ դառնալուն պատճառն, ինչպէս տեսանք Յովսեպոսէ՝ էր Ղուկուղղոս, որ առ Խորենացւոյն լինի Վայկուն, և գաւառը Վայկունիք։ Բայց հոս կը տեսնուի նաև աշխարհագրական սխալ, որ կասկածելի կ'ընէ թէ զՎայկուն և թէ զՎայկունիս գաւառ։ Խորենացւոյն Վայկունիքն, իբրև գաւառ Արձախու, այլուր կոչուած է Վակունիք, բայց ուղղագոյն ընթերցուածն կը թուի լինել Վահունիք, քանզի գաւառն էր ժառանգական երկիր Հայոց հին քրմական ցեղին Վահունեաց, և ի դարձին Հայոց առ Տրդատաւ տրուեցաւ եկեղեցւոյ և եղաւ կալուած տան Լուսաւորչին հանդերձ եկեղեցաքաղաքաւն Ամարասաւ, զոր ծաղկեցուց Գրիգորիս որդին Յուսկան, եպիսկոպոս գաւառին, և կոչուեցաւ կաթողիկոս Աղուանից, վասն զի Արձախ էր մասն Աղուանից երկրին։ Դիւրին է գուշակել զայս ի Բուզանդայ, որ յետ պատմելոյ զեպիսկոպոսանալն Գրիգորիսի Աղուանից այն մասին, զքարոզելն նորա Մազքթաց և մարտիրոսանալն այն բարբարոս ազգէն՝ կը յաւելու. «Այսպէս սպանին զառաքինին քարոզն Քրիստոսի զմանուկն Գրիգորիս։ Եւ ապա բարձին զնա որք ընդ նմա երթեալ էին ի գաւառէն Հաբանդայ, և բերին ի գաւառն իւրեանց ի կողմանս Աղուանից ի սահմանս Հայոց ի Հաբանդ, ի գեւղն որ անուանեալ կոչի Ամարազ. և եդին զնա առ եկեղեցեաւն զոր շինեալ էր առաջնոյն մեծին Գրիգորի, հաւուն Գրիգորիսի, քահանայապետին մեծի աշխարհին Հայաստան երկրին» (Բուզ. Գ. Զ.)։ Այս տեղեկութենէն կը տեսնուի, թէ Վայկուն, ուստի և Վայկունիք, իբրև յանուն յելուզակին կոչուած այսպէս՝ լինի կասկածելի։ Բուզանդ այս գաւառը

գիտէ Հաբանդ (քանզի առ Նովաւ վաղուց դադրած էր գաւառն ի լինելոյ Վահունեաց, և անցած էր եկեղեցւոյ), և կը կոչէ «գաւառ իւրեանց», այսինքն Գրիգորիսի և իւրոցն, և ասէ ևս, թէ Լուսաւորիչ կանխաւ շինած էր զեկեղեցին յԱմարաս, որ էր գլխաւոր տեղի կամ աւան գաւառին։ Եթէ մեր այս տեսութիւնը բռնի ևս թուի, և ընդունինք զՎայկուն իբրև պատմական անձն և զգաւառն ստուգիւ յանուն նորա կոչուած Վայկունիս՝ դարձեալ կը մնայ ստոյգ, թէ Տիդրանայ ահապարանօք դարձն ի Հայս բազմութեամբ զօրաց՝ էր Ղուկուղղոսի համար մանաւանդ, որպէս պատմէ Յովսեպոս, քան աւազակի մը համար։

Խորենացւոյն Բ. դպրութեան ԺԵ. գլուխն է զՊոմպէոսէ. «Յայնմ ժամանակի Պոմպիոս Հռոմայեցւոց զօրավար զօրօք բազմօք եկեալ հասեալ ի Միջերկրայս, զՍկաւրոս սպարապետ իւր յԱսորիս առաքէ՝ տալ պատերազմ ընդ Տիգրանայ։ Որոյ եկեալ և ոչ պատահեալ Տիգրանայ,--քանզի էր (նա) դարձեալ յիւր աշխարհն վասն խուճապանաց յեղուզակին—անցեալ Սկաւրոս ի Դամասկոս և տեսեալ զքաղաքն առեալ ի Մետեղայ և ի Ղուղայ՝ զնոսա հալածեալ անտի, ինքն ի Հրէաստան փութայր հասանել ի վերայ Արիստաբուղի, օգնականութեամբ եղբօր նորա երիցու, Հիւրկանու քահանայապետի, որդւոյ Աղեքսանդրի»։ Այս հատուած ևս է Յովսեպոսէ, թէպէտ այլայլեալ։ Ահա բանք Յովսեպոսի. «Ի ժամանակին զի Պոմպէոս մեծն տայր պատերազմ ի Հայս՝ առաքէ զՍկաւրոս յԱսորիս զօրօք. սա գտանէ, հասեալ ի Դամասկոս, զի Մետեղայ և Ղողեայ առեալ զքաղաքն՝ մեկնեալ էին ի բաց։ Անդ ազդ լեալ նմա որ ինչ անցք անցանէին ի Հրէաստան՝ չոքաւ անդր ակնկալեալ շահու» (Յովս. Պատմ. պատեր. Հր. Ա. 4)։ Այլուր (Հր. Նխն. պտմ. ԺԴ. 3, 4) յայտնագոյն ևս. «Զայնու ժամանակաւ Պոմպէոս զբաղեալ զպատերազմաւ Հայոց ընդդէմ Տիգրանայ՝ առաքէ զՍկաւրոս յԱսորիս։ Իբրև եհաս սա ի Դամասկոս, զոր սակաւ մի յառաջ առեալ էր Մետեղայ և Ղողեայ՝ եդ ի մտի մտանել ի Հրէաստան»։ Այս մասին մէջ Խորենացին, դիտմամբ թէ յանդէտս՝ լռութեամբ կ՚անցնի պատմական կարևոր կէտ մի իբրև նուազումն փառաց Տիգրանայ։ Յետ պարտութեանն և փախստեան Միհրդատայ՝ կուտայ Պոմպէի իսկ և իսկ երթալ յԱսորիս, մինչ ժամանակակից պատմութենէ յայտնի վկայուած է, թէ Պոմպէոս, յետ վերջին պարտութեանն Միհրդատայ իսկոյն գնաց Տիգրանայ վրայ, և յետ վճարելոյ գրեթէ առանց արեան Հայոց գործը և հրաժարեցուցանելոյ զՏիգրան դաշամբ Հայաստանէ դուրս երկիրներէն (64)՝ գնաց յԱսորիս, զոր արար նահանգ։ Նա և այն, թէ «Պոմպէի հուպ յե-

րիքով հասանեն աւետիք մահուանն Միհրդատայ» (Խոր. Բ. ԺԵ.)՝ է նոյնպէս Յովսեպոսէ.— «Պոմպէոս ընկալաւ զլուր մահուանն Միհրդատայ մինչ էր մօտ յԵրիքով» (Յով. Պատ. Հր. Ա. 5)։ Չենք գիտեր սակայն, թէ ուստի է և ինչ աստիճան հաւանականութիւն ունի այն զոր կը յաւելու պատմիչ մեր, թէ Պոմպէոս Պոնտացւոյ Պիղատոսի հօրը տուաւ սպանանել զՄիհրդատ թունով.—«Պոմպէոս ի ձեռն հօրն Պոնտացւոյ Պիղատոսի զՄիհրդատ սպանանէ թունաւոր դեղովք» (Խոր. Բ. ԺԵ.)։ Ստուգագոյն աւանդութիւն մահուան Միհրդատայ ըստ ժամանակակից պատմութեան այս է, թէ Միհրդատ մեծ բազմութեամբ Թրակացի ասպատակաց կը խորհէր իջանել յԻտալիա. այլ զօրն ապստամբեցաւ թելադրութեամբ Փառնակայ, որդւոյ Միհրդատայ, և Միհրդատ չմատնուելու համար Հռոմայեցւոց՝ առաւ թոյն, և երբ թոյնը չազդեց՝ կամեցաւ անձին առնել սրով, և ի չհամարձակել նորա դարձեալ՝ գաղատացի ոմն մատոյց նմա զայս վերջին ծառայութիւն (63)։ Խորենացին ԺԶ. գլխոյն սկիզբը կը յիշէ Հրեայ գերիներ, զորս «Նստոյց Տիգրան յԱրմաւիր և յաւանին Վարդգեսի որ ի վերայ Քասաղ գետոյ», պատմութիւն մը՝ որում կը վկայէ Բուզանդ. «Զայս ամենայն բազմութիւն Հրէից զորս գերեցին տարան (Պարսիկք առ Արշակաւ) յերկրէն Հայոց, ածեալ էր յերկրէն Պաղեստինացւոց մեծի թագաւորին Հայոց Տիգրանայ» (Բուզ. Դ. ԾԵ.)։ Չէ անհաւանական, թէ Տիգրան բերաւ Ասորւոց երկրէն և Պաղեստինէ հրեայ գաղթականներ, զորս զետեղեց յայլևայլ քաղաքս Հայոց։ Գաղթականներ բերել ի Հայս ի շինութիւն երկրին՝ չէր օտար ի սովորութենէն Տիգրանայ, ինչպէս յայտնի է Տիգրանակերտի պատմութենէն, զոր ելից Տիգրան գաղթականօք այլևայլ յոյն քաղաքաց բնակիչներէն։ Սակայն հաւանական է, թէ հրեայ գաղթականներ եկած էին ի Հայս յառաջագոյն իսկ քան զՏիգրան։

Խորենացւոյն այս ԺԶ. գլխէն, ինչպէս նաև ԺԵ, ԺԷ և ԺԸ. գլուխներէն կը տեսնուի, թէ մեր պատմիչն առնլով Յովսեպոսէ (Յովս. Հր. նխն. պատմ. ԺԴ. 11, 12 և այլն)՝ այն ժամանակին հռոմէական պատմութեան վրայ սաչափ միայն գիտէ կամ կամի գիտել, թէ նախ Սկաւրոս (64) սպարապետ Պոմպէի, ինչպէս արդէն յիշեցինք, ապա Գաբիանոս (64—56), հուսկ յետոյ Կրասոս (55) կու գան կամ կը ղրկուին յԱսորիս «տալ պատերազմ ընդ Տիգրանայ», բայց կամ չեն հանդիպիր նմա,—«ոչ պատահէ նմա», ինչպէս Սկաւրոս (Խոր. ԺԵ.), կամ չեն համարձակիր կռուել,—«ոչ իշխեաց ի դիմի հարկանել Տիգրանայ», ինչպէս Գաբիանոս (Գլ. ԺԶ.), և կամ «սատակի ամենայն զօրօքն հանդերձ ի պատերազմելն ընդ

Տիգրանայ, զորոյ ժողովեալ Տիգրանայ զգանձսն՝ դառնայ ի Հայս», ինչպէս Կրասոս (Գլ. ԺԷ.)։ Յայտնի է սակայն յոյն և հռոմայեցի պատմիչներէն, զորս վերագոյնն յիշեցինք և յորոց ոմանք են ժամանակակից կամ գրեթէ ժամանակակից, թէ այն զօրավարներէն, որ են յետ 64-ին՝ և ոչ մին եկաւ Տիգրանայ դէմ, որ յետ այն թուականին, այն է յետ պարտութեան իւրոյ ի Պոմպէոսէ դաշամբ՝ չիշխեց և չկարէր իշխել ելանել դուրս իւր բնիկ երկրէն Հայաստանէ։ Այն հռոմայեցի զօրավարք եկան նուաճել ոչ զՏիգրան, որ արդէն նուաճեալ էր և մնաց միշտ հաւատարիմ Հռոմայեցւոց ըստ Ստրաբոնի՝ այլ զԱսորիս, զՊաղեստին և զԵգիպտոս։ Վերջինն, Կրասոս, առաջին եռապետներէն մին, հաւասարելու համար փառաց իւր երկու ընկերներուն, Կեսարու և Պոմպէի, որ մեծամեծ յաղթութիւններով պայծառացած էին՝ եկաւ երթալ Պարթևաց վրայ, և արդարև գրեթէ ջնջուեցաւ զօրօք Պարթևաց դէմ պատերազմին մէջ, ուր Խորենացին գլխաւոր գործող կը համարի զՏիգրան, որ չյիշուիր ամենևին թէ ունեցաւ մասն այն պատերազմին մէջ (55, 54), նա մեռած իսկ էր։ Ի լուսաւորութիւն Հռոմայեցւոց և Պարթևաց պատմութեան այս մասին, որ կը վերաբերի ըստ մասին նաև Հայոց՝ դնենք հոս Վիքթոր Տիւրիւիի Հռոմայեցւոց պատմութենէն յաջորդ հատուածը, զոր կը քաղէ ժամանակակից պատմութենէ. «Յետ Պոմպէի չեղև ինչ փոփոխութիւն յարևելս։ Այլ Գաբինիոս եցոյց եթէ բազում ինչ մարթ էր շահել յերկրէն Ասորւոց։ Վարձեցաւ նա ի Պտղոմեայ Աւղետայ գնովք բիւր քանքարաց, և յետ հաստատելոյ զնա ի թագաւորութեան Եգիպտացւոց՝ վաճառեաց նմա և զկէս զօրաց իւրոց։ Ի Հռոմ ամբաստանեցաւ նա իբրև վնասակար հռոմէական ժողովրդեան, արդարացաւ կաշառօք, այլ յերկրորդում պատասխանատուութեանն, յորում Կիկերոն եկաց նմա պաշտպան յանխորհուրդս առ հաճելոյ զմիտս Պոմպէի՝ գնաց կծծութեամբ ընդ դատաւորսն, և պարտաւորեցաւ յաքսոր։ Զսա փոխանակէր Կրասոս, որ մին էր յառաջնոց երից արանց, և մեկնեցաւ՝ ի մտի եդեալ արշաւել ի Պարթևս։ Առանց կանխաւ տեղեկանալոյ հանգամանաց երկրին, առանց առնելոյ ի բանի զորս չէինն գոհ, և զազգսն արուարձանեայս որ ձեռնհաս էին տալ նմա առաջնորդս և այրուձի բազում՝ Կրասոս աճապարեաց անցանել ընդ Եփրատ, էառ քաղաքս ինչ ի քաղաքաց, արձակեաց ապապատակ առանց մեծի դժուարութեան, և ետ հուչակել զանձն ինքնակալ վասն այնպիսի դոյզն յաջողուածոց։ Ապա փոխանակ քաջութեամբ խաղալոյ յառաջ ի վերայ Բաբելոնի և Սելևկիայ, երկուց քաղաքաց որ առէին զտէրութիւնն Պարթևաց՝ դարձաւ յայրէն

ձմերել յԱսորիս, ուր թոյլ ետ զօրուն մեղկել հատանել ի յուլութիւն և ի ցոփութիւն. և ինքն որ էր զվաթսնամենիւք անցեալ, ոչ լայլ ինչ մտաբերէր՝ բայց այց առնել մեհենից առ ի կողոպտելոյ զգանձս նոցա. տաճարն Երուսաղեմի լինէր կապուտ կողոպուտ, որպէս լեալ էր մեհեանն Հերապօղեայ։ Արտաւազդ արքայ Հայոց խոստանայր նմա անցս ընդ երկիր իւր, ուր զօրն Հռոմայեցւոց գտանելոց էր պաշար, ճանապարհ անկասկած և վայր դիպող ի հրահանգս զինուորութեան. այլ Կրասոս չառ յանձն։ Նանց երկրորդ անգամ ընդ Եփրատ առ Զևգմաւ եօթն լեգէոնովք և չորեքհազար հեծելովք, և հրապուրեալ յիշխանէ ումեքէ արաբացւոյ (որ էր մին յԱբգարաց)՝ մխեցաւ ի Միջագետս, ի ծով ուրեմն աւազոյ, ուր յետ սակաւուց ամենայն ինչ պակասէր զօրուն, մանաւանդ վստահութիւն ի զօրավար անդր իւրեանց (53)։

Պարթևք բաժանեալ էին զզօրութիւն իւրեանց. արքայն Հրահատ (Որոդէս) խաղայր ընդ հիւսիսակողմն՝ ունել զառաջս արքային Հայոց, իսկ Սուրէն սպարապետն Արեաց գումարեալ էր զանթիւ այրուձին՝ ի մէջ առեալ փակել զհետևակազօրն Հռոմայեցւոց կոտորել։ Իբրև անկանէր այրուձին այն ի վերայ լեգէոնացն՝ կարգքն խիտ առ խիտ ճակատեալք զդէմ ունէին յարձակմանն, այլ զէնք Հռոմոցն եղեն նոցա անօգուտ։ Եթէ սոքա յառաջ խաղային՝ Պարթևք տային խոյս. եթէ առնուին զկայ՝ վաշտք հեծելոցն գային շուրջ զետեղակալ լեգէոնովքն և ծակոտէին զնոսա նետիւք։ Հետևակազօրն թեթև արձակեալ ի վերայ նոցա՝ գայր այսրէն խառն ի խուռն, ամրանալ զկնի լեգէոնացն։ Մանուկն Կրասոս յարձակեցաւ յայնժամ ի գլուխ 1300 հեծելոց, որոց հազարն էր այրուձի գաղատացի։ Տեղի ետ թշնամին, և ձգեաց զնա հեռի ի բանակատեղւոյն բաժնիւ միով հետևակաց, որ զհետ երթային զնորա՝ իբրև տեսին զթշնամին զի փախչէր. այլ սոցա յանկարծ դարձուցեալ զերեսս պատէին զնովաւ։ Յետ սաստիկ կռւոյ, Կրասոս ծակոտեալ ի վիրաց՝ տայր զինակրին իւրում սպանանել զնա առ ի չանկանելոյ կենդանւոյն ի ձեռս։ Պարթևք հատեալ զգլուխն՝ գային շրջեցուցանել դէմ յանդիման լեգէոնացն առաջի աչաց սրտառուչ հօրն։ Առժամայն սկսաւ ճակատն և տևեաց մինչև ցայգ, և ոչ միոյ կողման լինէր յաղթութիւնն. երկոքին կողմանք բանակէին հանդէպ միմեանց։ Ի կողմն լեալ ի գետնի յանհնարին վհատութեան՝ Կրասոս զմտաւածէր զանդունդն յոր արկ զնա ամբարտաւանութիւն նորա։ Ի զուր ջանայր քաջալերել զանձն. հարկ իմն լինէր տալ անձամբ անձին հրաման դարձի զօրուն։ Թողեալ չորեքհազար վիրաւորս՝ գային հասանէին ի քաղաքն Խառան, ուստի ի վաղիւն

գիշերային մեկնէր զօրն լռելեայն։ Բայց խաբեցան յառաջնորդէն, և յընդ հուպ ի վերայ հասանել Պարթևաց, զահի հարեալ զօրացն՝ ստիպէին զզօրավարն երթալ խօսել ի հաշտութիւն ընդ Սուրենայ։ Այլ դաւ էր այն. Կրասոս և որ ընդ նմայն երթեալ էին՝ սպանան։ Խուն ինչ մնացորդ կարաց անցանել ընդ Եփրատ, ընդ որ և Պարթևք անցանէին զկնի նոցա։ Այլ Կասիոս ելեալ ի Խառանէ յառաջ քան զզօրավար իւր և ողջամբ հասեալ յԱսորիս՝ եգիտ պարապ կազմելոյ գունդս, և վանէր զնոսա (53)։ Միւս անգամ փորձ փորձեալ նոցա (Պարթևաց) ընդ հրամանատարութեամբ Բակրոյ, որդւոյ թագաւորին՝ ոչինչ լաւ քան զառաջին նուագն յաջողէին (52)։ Սակայն Բիբուղոս յաջորդն Կասեայ պաշարեցաւ յԱնտիոք քաղաքի (51), և Պարթևք սպառնային Կիլիկեայ, ուր կուսակալ էր Կիկերոն»։ Այս հատուածէն որ քաղուած է այն ժամանակին հռոմէական պատմութեան երևելի հեղինակներէն, և ուրիշ պատմական ակնարկութիւններէ բաւական յայտնի կը տեսնուի, թէ Կրասոսի պատերազմն էր ընդդէմ Պարթևաց և ոչ Հայոց, և Տիգրան, կամ մանաւանդ յաջորդ նորա Արտաւազդ՝ էին, կամաւ թէ ակամայ, ձեռնտու Հռոմայեցւոց և ոչ Պարթևաց, ընդ որս մանաւանդ թըշնամութեամբ էին Հայք (Յուստ. ԽԲ.)։ Ուստի հակառակ է պատմութեան՝ ասելն Խորենացւոյն, թէ Կրասոս «Խաղաց ի վերայ Տիգրանայ, և անցեալ ընդ Եփրատ սատակի ամենայն զօրօքն հանդերձ ի պատերազմելն ընդ Տիգրանայ», առանց ամենևին յիշելոյ զՊարթևս։ Հակառակ պատմութեան է նաև այն, զոր ասէ Խորենացին, թէ Տիգրան առաւ Կրասոսի բոլոր աւարը.—«Փոխըզեալ Տիգրանայ զգանձսն (Կրասոսի)՝ դառնայ ի Հայս», մինչ գիտենք, թէ ի ձեռս Պարթևաց անկաւ Հռոմայեցւոց գերին և աւարն, յորս էին արծուէնշան դրօշք, զորս յետ տուին Պարթևք առ Օգոստեաւ (20)։

Ըստ ԺԲ. գլխոյն՝ յետ բնաջինջ լինելոյ Կրասոսի Հռոմայեցիք բարկանալով կը ղրկեն բազմութեամբ զօրաց զԿասիոս, որ գալով չթողուր Հայոց անցնել ընդ Եփրատ.—«Զչարեալ Հռոմայեցւոց՝ առաքեն զԿասիոս անթիւ զօրօք։ Սա եկեալ և ընդդէմ կացեալ՝ չտայ թոյլ զօրացն Հայոց անցանել ընդ Եփրատ և ապստամբել յԱսորիս»։ Զայս ևս կ'առնու Խորենացին Յովսեպոսէ. «Կրասոս յաջորդեաց Գաբինեայ ի կուսակալութեան Ասորւոց, և առ հայթայթելոյ զծախս պատերազմին որ ընդ Պարթևս՝ առ զամենայն ոսկի զոր եգիտ ի տաճարին. անց յետոյ ընդ Եփրատ և սատակեցաւ ամենայն զօրօքն։ Կասիոս կանխեալ եկն յԱսորիս արգելուլ զխաղալ Պարթևաց յառաջ, որ պատրաստէին մտանել անդր» (Յովս. Վասն Հր. պատ. ընդդէմ Հռոմ. Ա. 6)։ Յովսեպոս չըսեր թէ Հռոմայեցիք

գրկեցին զԿասիոս ընդդէմ Հայոց, այլ թէ Կասիոս կանխեց մտնել յԱսորիս չտալու համար թոյլ Պարթևաց անցանել ընդ Եփրատ։ Այսպէս Յովսեպոս, ըստ պատմութեանն զոր վերագոյնն համառօտեցինք՝ կու տայ իմանալ, թէ Կասիոս էր ի զօրավարաց Կրասոսի, և յետ սպանման նորա և ցրուելոյ զօրուն՝ աճապարեց կանխել գալ յԱսորիս զդէմ ունել Պարթևաց։

Խորենացին նախընթաց գլխոյն մէջ ըսած էր, թէ Գաբինոս յանձնած էր գաղտ Տիգրանայ զորդին Միհրդատայ զՄիհրդատ, զոր Պոմպէոս բռնած էր.—«Գաղտնի հաշտութիւն խօսեցեալ (Գաբինոս) ընդ Տիգրանայ՝ տալ զքեռորդին նորա զպատանին Միհրդատ զորդին Միհրդատայ, զոր կալեալ էր Պոմպէի ի Մաժաք» (Խոր. Բ. ԺԶ.)։ Հոս կ'ըսէ, թէ Տիգրան կասկածելով, թէ իւր քեռորդին չէր Միհրդատ՝ չտուաւ նմա մասն ինչ իշխանութեան։ Զարմանք է որ Տիգրան, յետ պահելոյ այնչափ տարի առ իւր զպատանին Միհրդատ՝ յանկարծ կը տարակուսի թէ է քեռորդի նորա.—«Զայսու ժամանակաւ թերահաւատութիւն լեալ Տիգրանայ ի պատանին Միհրդատ, չկարծելով ինքեան քուերորդի՝ չտայ նմա մասն ինչ իշխանութեան»։ Կրտսերն Միհրդատ, այն է երէց որդին Միհրդատայ, զոր Խորենացին կը կոչէ «պատանի»՝ 88-էն հետէ վարած էր մեծամեծ պաշտօններ ի կենդանութեան հօրն, և էր այնպէս ծանօթ և անուանի, որ անհնար էր Տիգրանայ այնպէս երկար ունել զնա առ իւր առանց քաջ ճանաչելոյ զնա։ Երկրորդ՝ ինչ մասն իշխանութեան էր, զոր Տիգրան չտուաւ քեռորդւոյն. եթէ Պոնտոսի թագաւորութենէն՝ այն արդէն ջնջուած էր, քանզի Պոնտոս 64-էն հետէ եղաւ նահանգ Հռոմայեցւոց։ Սա ևս զարմանալի է, որ Միհրդատ չկարէր լինել քեռորդի Տիգրանայ, քանզի ըստ միաբան վկայութեան յոյն և հռոմայեցի պատմագրաց՝ ոչ թէ քեռայր էր Տիգրանայ Միհրդատ, այլ աներ նորա, քանզի Տիգրան առած էր զԿղէոպատրա, մին յերիցագոյն դստերաց Միհրդատայ։ Խորենացին կը յաւելու, թէ Տիգրան չտուաւ Միհրդատայ «և ոչ զիւր աշխարհըն Վրաց»։ Ըստ Խորենացւոյն՝ Միհրդատայ ցեղն ունէր Վրաց բդեշխութիւնը (Խոր. Բ. Ը, ԺԱ.). այս է բոլորովին անտեղի։ Իսկ այն զոր կը յաւելու, թէ «Եւ Միհրդատայ արհամարհութիւն կրեալ ի քեռւոյն իւրմէ Տիգրանայ՝ ապստամբութեամբ անկանի առ Կեսար, իշխանութիւն գտեալ ի նմանէ զՊերգեայ քաղաքի՝ զօրավիգն օգնականութեան լինի Անդիպատրոսի հօր Հերովդի, Կեսարու հրամանաւ, և շինեալ զՄաժաք ընդարձակագոյն և պայծառ շինուածովք՝ անուանէ Կեսարիա ի պատիւ Կեսարու», և թէ «յայնմհետէ բարձեալ լինի իշխանութիւն Հայոց ի քաղաքէն յայնմանէ»—է

պատմութիւն անհիմն, լի ժամանակագրական սխալներով, զորս մի առ մի հերքել աւելորդ է։ Սաչափ միայն ասել բաւական է, թէ Միհրդատ, զոր Խորենացին կը յիշէ առնլով դարձեալ Յովսեպոսէ խառնիխուռն, իբրև օգնական Անդիպատրոսի ի նպաստ Կեսարու՝ չէ կրտսերն Միհրդատ, որդի մեծին Միհրդատայ, այլ Միհրդատ Պերգամացի (տես Յովս. Նախն պատմ. Հր. ԺԴ. 14, և Թէոտոր Ռէյնաք, Միհրդ. Եւպատ. էջ 297) և կոչեալն Մաժաքայ Կեսարիա՝ եղած է պատիւ Տիբերի և ոչ Կեսարու, իսկ իշխանութիւնն Հայոց բարձաւ ի Մաժաքայ 64-ին առ Պոմպէիւ, երբ Տիգրան հրաժարեցաւ դաշամբ իւր բոլոր երկիրներէն արտաքոյ Հայաստանի։

Խորենացին կ՚սկսի իւր ԺԹ. գլուխն այսպէս. «Յետ այսր ամենայնի ի հիւանդութիւն եգեալ Տիգրան՝ աղերսէ ի սէր զԱրտաշէզ արքայ Պարսից, յաղագս հպատակութեան հօրն՝ հանելով ի նոցանէ զնախագահութիւն։ Իսկ սա իւրովք կամօք զերկրորդականն ունելով ըստ իրաւանց՝ դարձուցանէ ի նա զնախագահութիւնն, և ի հաշտութիւն ածեալ զԱրտաշէզ՝ առնու ի նմանէ զօր յօգնականութիւն»։ Չէ ամենևին ճշմարիտ, թէ Պարթևաց թագաւորութիւնն էր ի բնէ առաջին, և Հայոցն՝ երկրորդ, կամ այլով բանիւ՝ Հայոց երկրորդ հարստութիւնն, այն է Արշակունեաց՝ էր ձեռակերտ իշխանութիւն, արդի բառիւ՝ աւատ Պարթևաց։ Պողիբիոս և Ստրաբոն կը խօսին ըստ բաւականին Հայոց երկրորդ հարստութեան ծագման և ընդաձակելուն վրայ. կայ նաև աղօտ ակնարկութիւն, ինչպէս յիշեցինք վերը, թէ եղան պատերազմներ ի մէջ այս նորընծայ թագաւորութեան և Պարթևաց, յանուանէ առ հարբն կամ նախորդաւ Տիգրանայ, որ ըստ Ապպիանոսի կոչուէր նոյնպէս Տիգրան, ըստ Յուստինոսի՝ Արտաւազդ. իսկ զՏիգրանայ ունինք աւելի մանր և ստոյգ տեղեկութիւններ. բայց չիք ուրեք ամենևին ակնարկութիւն, թէ Պարթևաց թագաւորութիւնն էր ի բնէ առաջին և Հայոցն՝ երկրորդ, կամ Խորենացւոյն բանիւ՝ Պարթևք ունէին նախագահութիւն ի վերայ Հայոց։ Խնդիրն առաջնութեան և երկրորդութեան կը ծագի այն սխալ պատմութենէն, թէ Արշակ մեծ (Պարթև) նուաճելով բոլոր Ասիա՝ տուաւ զՀայաստան և զՄիջագետս իբրև աւատ եղբօր իւրում Վաղարշակայ։ Այս կարծեաց դէմ զինեցանք մեք յառաջնում մասին Պատմութեան մերոյ, դնելով Արշակունեաց հարստութիւնն ոչ իբրև աւատ Պարթևաց, այլ իբրև ինքնօրէն իշխանութիւն, դուստր հին Արարատեան թագաւորութեան, նկատելով զԱրտաքսիաս իբրև շառաւիղ այն հին Հայ թագաւորական տան, որ երկրորդ անգամ ծաղկելով Արշակունի անուամբ՝ հասաւ Տիգրանաւ յիւր յետին բարձրութիւն։ Մեր այս տեսութենէն շատ հեռի

չէ արդի քննադատութիւնն, ինչպէս տեսանք Ռէյնաքայ երկայն յօդուածէն զոր համառօտիւ կը կրկնենք հոս. «Պարտութիւնն Անտիոքոսի մեծի առ Մագնեսեաւ—ասէ Ռէյնաք ի գիրսն Միհրդատ Եւպատոր, էջ 103 եղև նշան համօրէն ազատութեան բովանդակ աշխարհին Հայոց։ Երկոքին կուսակալք, գաւառատեարք թագաւորին (Անտիոքոսի մեծի), Արտաքսիաս և Զարիադրէս, ազնուականք երկու իրանեանք. որպէս թուի՝ հուչակեցին զանձինս միահեծան իւրաքանչիւր յիւրում իշխանութեան, և կոչեցան թագաւորք կամօք և պաշտպանութեամբ ծերակուտին։ Այսպէս արկաւ հիմն երկուց հայ թագաւորութեանց որ կացին մնացին զողջոյն դարն Բ., ի հիւսիսոյ արևելից՝ Մեծ Հայք, որ ունէր զիւր նիստ ի հովտին Երասխայ, յարևմտից հարաւոյ՝ Ծոփք, որոյ մայրաքաղաք էր Կարկաթիոկերտ, շինեալ ի բարձրաւանդակի որ հայէր ի դաշտավայրս Դկղաթ գետոյ. (Ստր. ԺԱ. 14, 15)։ Երկոքին հայ տէրութիւնք թէպէտև կրեցին հակառակութիւն յԱսորւոց առ Եպիփանն Անտիոքաւ՝ կալան պինդ զազատութիւն իւրեանց, տարածեցան ընդ ամենայն կողմանս, նմ կապեցան իսկ առ ժամանակ մի զօդիւ դաշանց ընդ Փոքուն Հայոց։ Այլ ընդ հուպ Մեծ Հայք, թագաւորութիւնն Արտաքսիասայ, գըտաւ յառաջադէմ քան զմիւս զերկուսն, և անձուկ աշխարհակալութեան նորա ստիպեաց զնոսա խնդրել պաշտպանութիւն յօտարաց։.. Ի կատարած կոյս դարուն՝ յառաջադէմ խաղացք Մեծին Հայոց խափանեցան ի Պարթևաց, որոց հանեալ էր ի Սելևկեանց ըզՄարս և զՄիջագետս։ Ութերորդն Արշակ, Միհրդատ մեծ, որ ած զիշխանութիւն Պարթևական ի ծագ անդր բարձրութեան՝ կաքաւէր, մօտ ի վախճան տէրութեան իւրոյ, ի կռիւ ընդ Հայոց, և յաղթեալ թագաւորի նոցա Արտաւազդայ (Յուստ. ԽԲ. 2, 16)՝ առնոյր պատանդ զարքայորդին Տիգրան (Յուստ. ԼԸ. 3. Ստր. ԺԱ. 14, 15)։ Զառ յանձն Պարթևն շնորհել սմա ազատութիւն և ըզգահ հաւուց իւրոյ (95 նախ քան զՔր.)՝ բայց տալով նմա հրաժարել խոստմամբ յեօթանասուն փոքր գաւառաց կամ հովտաց աշխարհին Հայոց։ Հայաստան խոնարհեալ, այլ ոչ բեկեալ և ոչ նուաճեալ (Ստր. ԺԶ. 1, 19)՝ եւտես զանձն շուրջ պաշարեալ իբրև գօտւով ի մանր մանր տէրութեանց, որ էին փոքր ի շատէ ընդ իշխանութեամբ Պարթևաց, որպէս Ուռհայաստան, Կորդուք, Ադիաբէն, Մարք Ատրպատականի, որ էին արգել ընդարձակելոյ նորա։ Տիգրան որ կալեաց թագ յայնպիսում դժուարին ժամանակի, այն ինչ համբարձեալ յաթոռն՝ սկիզբն արար գործոյն աշխարհակալութեան, մարտ տուեալ ընդ արքային Ծոփաց Արտանայ (Վարդանայ)։ Վերջինն Զարիադրեանց ոչ գտեալ օգնութիւն ի տկար դրացւոյ իւրմէ

ի Կապադովկիոյ՝ ընկճեցաւ, և Ծոփք հանդերձ սահմանօքն (Եկե-ղեաց. այլովքն հանդերձ) միացան ընդ Մեծին Հայոց (Ստր. ԺԱ. 14, 15)»։

Այսպէս Տիգրան իւր աշխարհակալութեամբ, և ոչ «հպարտու-թեամբ հօրն», առաւ Արքայից արքայ անունը, զոր Պոմպէոս թոյլ տուաւ նմա պահել նաև յետ պարտութեանն։ Արքայից արքայ ա-նունն ունէին բոլոր դահեկանք ոչ Տիգրանայ միայն, այլև յաջոր-դաց նորա։

Խորենացին յետ գնելոյ Տիգրանայ կարծեցեալ հաշտութիւնն ընդ Արտաշէզի կամ Արշէզի՝ կու տայ նմա արշաւել յԱսորիս ընդ-դէմ Հռոմայեցւոց, պատմութիւն մը՝ որ չունի հիմն ըստ ժամա-նակակից վկայութեան։ Յետ պարտութեանն և սպանման Կրասոսի (53), Կասիոս, ինչպէս պատմեցինք՝ անցաւ զԵփրատ և չթողուց Պարթևաց մտանել յԱսորիս։ Բայց յետ մեկնելոյն Կասիոսի յարև-մուտս, երբ Հռոմայեցիք յուզման մէջ էին երրորդ եռապետու-թեան կռիւներով՝ Պարթևք պարապ գտնելով անցան զԵփրատ և կալան զԱսորիս և զՊաղեստին (36)։ Հրեայք խռովութեան մէջ էին յայնժամ։ Հիւրկանոս Բ. և Արիստոբուղոս եղբարք կը ջանային կոր-զել զիշխանութիւնն իրարմէ (Յովս. Հր. նախն. պատմ. ԺԴ. 1—4)։ Պոմպէոս որոշած էր վէճն ի նպաստ Հիւրկանու (Անդ. ԺԴ. 5)։ Կեսար ի գալն յարևելս (47)՝ հաստատած էր ի քահանայապետու-թեան զՀիւրկանոս, իսկ Անտիպատրոսի, հօր Հերովդի, տուած էր թագաւորութիւնը (Անդ. ԺԴ. 15). զնոյն հաստատեց և Անտոնիոս՝ երբ եկաւ յարևելս (42) յետ սպանման Կեսարու (44) (Յովս. ԺԴ. 23)։ Երբ Պարթևք մտան յԱսորիս և ի Պաղեստին՝ Անտիգոնոս որդին Արիստոբուղի կը դիմէ առ նոսա և կը շահի զնոսա խոստ-մամբ։ Պարթևք կ'օգնեն Անտիգոնոսի կողման և դաւով կը բռնեն զՀիւրկանոս և զՀերովդեանս։ Զայս ամենայն կը պատմէ երկար Յովսեպոս, որմէ կ'առնու Խորենացին կամ աղբիւր նորա, փոխա-նակ Պարթևաց զՀայս ցուցնելով գործող այն արշաւանաց ժամա-նակ։ Առ Խորենացւոյն՝ Բակուր որդի թագաւորին Պարթևաց չյիշ-ուիր ամենևին. Լիսանիաս որդի Պտղոմեայ արքայի Լիբանանու, աներոյն Անտիգոնոսի՝ լինի Պակորոս (Բակուր) որդի Ասորւոց թա-գաւորի. Բարզափառնէս նախարար, սպարապետ Պարթևաց՝ լինի Բարզափրան նահապետ Ռշտունեաց, քանզի Ռշտունեաց էր սպա-րապետութիւն հարաւային զօրուն ի Հայս ըստ Խորենացւոյն (Խոր. Գ. Զ.). Բակուր, տակառապետ արքային Պարթևաց՝ լինի Գնէլ Գնունի, քանզի տակառապետութիւնն էր Գնունեաց, նոյնպէս ըստ Խորենացւոյն (Խոր. Բ. Է.)։ Համառօտիւ, ինչ որ կը պատմուի

զՊարթեւաց առ Յովսեպոսի՝ այն ամենայն կը տրուի Հայոց առ Խորենացւոյն, մինչ գիտենք ժամանակակից պատմութենէ, թէ Տիգրան կամ Հայք չունեցան ամենեւին մասն այն գործերուն մէջ։ Հոս կը դնենք Յովսեպոսի և Խորենացւոյն հատուածները, ցուցնելու համար, թէ մեր պատմութեան հօր աղբիւրն ոչ թէ Ափրիկանոս է, այլ Յովսեպոս, որ ըստ հաճոյս կը փոխուի առ Խորենացւոյն։

## ՅՈՎՍԵՊՈՍ

«Կասիոս (զօրավար Կրասոսի, յետ պարտութեան սորա) խոյս ետ յԱսորիս և արգել զանյս Պարթեւաց, որ պատրաստէին մտանել անդր։... Անց նա անտի ի Հրէաստան, և ապա յարեւմուտս, քանզի յարեաւ ընտանի պատերազմ զայնու ժամանակաւ ի մէջ Հռոմայեցւոց։... Կայսր (Կեսար) սպանաւ ի Կապիտողին ի Կասեայ և ի Բրուտոսէ յետ տիրելոյ զամս երիս և զկէս ամի։... Յետ երկուց ամաց, մինչ Բարզափառնէս, մին յաւագաց անտի Պարթեւաց, վարէր զԱսորիս ընդ Բակրոյ, որդւոյ արքային նոցա՝ Լիսանիաս որ յաջորդեալ էր հօր իւրում Պտղոմեայ Մեննեայ (արքայի Լիբանանու, աներոյն Անտիգոնոսի)՝ խոստացաւ նոցա հազար քանքար և կանայս հինգհարիւր, եթէ հալածեալ զՀիւրկանոս ի թագաւորութենէն՝ հաստատեսցեն զԱնտիգոնոս։ Ուստի անկան նոքա յուղի։ Բակուր խաղայր առ ծովեզերբն, և Բարզափառնէս անտի ընդ ցամաքակողմն։ Բակուր առաքեաց առաջի իւր ի Հրէաստան վաշտ մի հեծելոց ընդ հրամանատարութեամբ տակառապետին իւրոյ, որ

## ԸՍՏ ԽՈՐԵՆԱՑՒՈՅՆ

«Առեալ (Տիգրանայ յԱրտաշէզէ) զօր յօգնականութիւն ինքեան՝ զԲարզափրան նահապետ Ռշտունեաց նախարարութեանն սպարապետ կացուցանէ Հայոց և Պարսից զօրաց, և առաքէ ի վերայ զօրացն Հռոմայեցւոց, հրաման տուեալ զբնակիչս աշխարհին Ասորւոց և Պաղեստինացւոց ի հաշտութիւն հաւանութեան խօսել։ Նմա ընդ առաջ լինի ոմն Պակարոս (Բակուր. ըստ Յովսեպոսի՝ Լիսանիաս որդի Պտղոմեայ Մեննեայ արքայի Լիբանանու աներոյն Անտիգոնեայ, Յովս. Ժ. 7, 10, ինչպէս կը տեսնուի ի հատուածին Յովսեպոսի ի հանդիպոյ) անուն, որոյ հայրն թագաւոր լեալ Ասորւոց, և ինքն խնամի Անտիգոնեայ Արիստաբուղեանց։ Եւ եկեալ առ Բարզափրան նահապետ Ռշտունեաց և սպարապետ Հայոց և Պարսից, և խոստանայ հինգ հարիւր կին գեղեցիկ և հազար քանքար ոսկւոյ, զի օգնեսցէ նոցա, ընկենլով ի թագաւորութենէ Հրէից զՀիւրկանոս, և թագաւորեցուցանէ զԱնտիգոնոս։ Իբրև ետես Հիւրկանոս Հրէից քահանայապետ և թագաւոր, և Փասայեղոս եղբայր

կոչէր նոյնպէս Բակուր, տուեալ նմա հրաման գործել ընդ Անտիգոնեայ, որոյ շահեալ էր զՊարթևս խոստմամբք։ Անտիգոնոս եդ ի մտի ընդունել զտակառապետն իբրև միջնորդ խաղաղութեան. Փասայէլ ևս (եղբայր Հերովդի) հաւանեցաւ, և այսպէս եմուտ պարթևն ի քաղաք անդր հինգ հարիւր հեծելովք, պատճառանօք ցածուցանելոյ զխազմն։ Եւ խորհուրդ Փասայելի երթալ գտանել զԲարզափառնէս՝ խօսել զպայմանաց միաբանութեան. և նա հաւանեցաւ, հակառակ խրատուն Հերովդի, որոյ գիտացեալ զնենգութիւն բարբարոսացն՝ խրատ տայր նմա ջանալ սպանանել մանաւանդ զբարբարոսն, քան առնուլ յանձն անկանել յորոգայթն որ լարէր։ Բակուր (տակառապետն) առ ի բառնալոյ զամենայն կասկած տարակուսի ի մտաց Փասայելի՝ գնաց ընդ նմա հանդերձ Հիւրկանու, և եթող առ Հերովդի զոմանս ի հեծելոց անտի զորս Պարթևք ոստիկանս կոչեն։ Իբրև հասին ի Գալիլեա՝ Բարզափառնէս ընկալաւ զնոսա մարդասիրութեամբ, նա և պարգևս ևս տայր նոցա, այլ եդ նա արս ի դարանի ի ճանապարհին ընդ որ երթալոց էին։ Տարան զնոսա ի տուն մի մօտ ի ծովեզրն, Եդիպպոն անուն, ուր զգացուցին նոցա եթէ Անտիգոնոս խոստացեալ էր Պարթևաց հազար քանքար և հինգ հարիւր կին։ Ոմանք խորհուրդ ետուն Հերովդի, եթէ զզօրս Հռոմայեցւոց փախստական արարեալ, զոմանս ի ծով, զոմանս ի քաղաքս, խաղաղութեամբ ընդ երկիրն անցանէր Բարզափրան՝ խօսին և ինքեանք զխաղաղութիւն առ Բարզափրան։ Եւ նորա զԳնէլ ոմն տակառապետ արքային Հայոց որ էր յազգէն Գնունեաց, առաքէ յԵրուսաղէմ հանդերձ հեծելազօրու, իբր թէ ի պատճառս խաղաղութեան, բայց ի գաղտնիս՝ օգնել Անտիգոնեայ։ Եւ Հիւրկանոս զտակառապետն ամենայն զօրօքն ոչ ընդունէր յԵրուսաղէմ, այլ միայն հինգհարիւր հեծելովք։ Եւ տակառապետին դաւով խրատ տուեալ Հիւրկանու, զի առ Բարզափրան երթիցէ վասն աւերածոյ աշխարհին, և ինքն խոստանայր լինել բարեխօս։ Եւ Հիւրկանու երդումն խնդրեալ ի Բարզափրանայ՝ երդնու նմա յարեգակն և յամենայն պաշտամունս իւրեանց երկնայինս և երկրայինս և յարև յԱրտաշեզի և Տիգրանայ։ Ընդ որ վստահացեալ Հիւրկանոս՝ թողու զՀերովդէս ի վերայ Երուսաղեմի, և զՓասայելոս երէց եղբայր Հերովդի առեալ ընդ իւր՝ գայ առ Բարզափրան ի ծովեզրն, ի գեւղն որ կոչի Եքտիպոն։

Փասայելի փախչել, այլ նա չառ յանձն թողուլ զՀիւրկանոս, և եդ ի մտի երթալ գտանել զԲարզափառնէս։ Տրտունջ լինէր նմա. Եթէ ցանկութիւն արծաթոյ, ասէ, յօժարեցոյց մատնել զիս՝ ինձ մարթ էր տալ առաւել քան զոր Անտիգոնոսն խոստացաւ տալ։ Բարբարոսն այն հաստատէր նմա երդմամբ, թէ սուտ էին իրքն և չոքաւ գտանել զԲակուր (զարքայորդին)։ Այն ինչ մեկնեալ էր Բարզափառնեայ՝ նոքա որոց հրաման տուեալ էր՝ կալան զՓասայէլ հանդերձ Հիւրկանու։ Իսկ տակառապետն զոր առաքեալ էր Բարզափառնէս ունել զՀերովդէս՝ արար զոր կարողն էր առնել, հանելոյ զնա յապարանիցն, այլ չկամեցաւ նա ելանել։ Տակառապետն խորհէր զայլ հնարս խաբելոյ զնա նենգութեամբ, մինչ Հերովդէս մտաբերեաց գաղտ մեկնել զիշերայն։... Սակայն Պարթևք յաւարի առին յԵրուսաղէմ զտունս փախստէիցն առանց ընդնաւ մխելոյ ձեռս յերիս հազար քանքարսն որ էին Հիւրկանու։ Խելլ արկին և ապարանիցն արքունի, այլ ոչ գտին զոր յուսային. զի Հերովդէս որ գիտակն էր խորամանկութեան նոցա՝ առաքեալ էր յԵդովմայեցիս որ ինչ էր նորա պատուական, զմայր և զեղբարս իւր ևս։ Բարբարոսքն ոչ համարեալ շատ կողոպտել զքաղաքն՝ քանդեցին նաև զշէնսն, և ոչ միայն կացուցին զԱնտիգոնոս թագաւոր, այլև ետուն

Եւ Բարզափրան խորամանկութեամբ պատուէր զնոսա, և ինքն յանկարծակի գնացեալ անտի՝ մնացելոց զօրացն հրաման տայր ի բուռն առնուլ զնոսա և ի ձեռն Անտիգոնի մատնել։

Եւ Անտիգոնոս ի վերայ Հիւրկանու անկեալ՝ զականջն ատամամբքն ի բաց կտրէր. զի թէ և այլ ժամանակ փոխեսցի՝ մի՛ հնար լիցի նմա զքահանայապետութիւնն ունել, քանզի օրէնքըն զողջանդամսն հրամայեն կացուցանել քահանայս։ Եւ Փասայէլ եղբայր Հերովդի իւրովի զարկեալ զգլուխ իւր զքարի՝ առաքեցաւ բժիշկ յԱնտիգոնէ, իբր թէ բժշկել զնա. եդից զվէրն թունաւոր դեղովք, և վախճանեցոյց։ Եւ Բարզափրանայ հրաման տուեալ տակառապետին Հայոց յԵրուսաղէմ զՀերովդէս որսալ. իսկ տակառապետն ելեալ արտաքս քան զպարիսպն, զՀե-

ի ձեռս նորա զՀիւրկանոս և զՓասայէլ կապեալ։ Անտիգոնոս եւս կտրել զականջսն Հիւրկանու, զի զինչ փոփոխութիւն և հասանիցէ՝ գտցի անբաւական վարել զքահանայապետութիւնն, քանզի օրէնք մեր արգելուն մատուցանել յայն պատիւ՝ որոց խեղութիւն ինչ իցէ յանդամսն։ Իսկ Փասայէլ, որոյ չէր ոչ սուր և ոչ ազատութիւն վարելոյ ձեռօքն՝ ոչինչ դանդաղեցաւ գտանել հընարս առնելոյ անձին, հարեալ զգլուխ իւր զքարի։... Ոմանք ասեն եթէ Անտիգոնոս առաքեաց նմա բժիշկս, որ փոխանակ դեղոց ի բժշկել զնա՝ արկին թոյն ի վէրսն։... Թէպէտև բարկացան յոյժ Պարթևք, զի Անտիգոնոս չեղև ձեռնհաս տալ նոցա զհինգ հարիւր կանայսն զորս խոստացեալ էր՝ թագաւորեցուցին զնա յԵրուսաղէմ, և տարան զՀիւրկանոս կապեալ յաշխարհն իւրեանց»։

րովդէս պատրել. զոր չառեալ յանձն Հերովդի, այլ և ոչ կալ ի քաղաքին, երկուցեալ ի պատառմանէ Անտիգոնեացն՝ ի գիշերի ի ծածուկ ընտանեօք հանդերձ առ Եդովմայեցիս փախչէր. ի Մասադան յամուր թողեալ զընտանիսն, ինքն ի Հռոմ փութայր հասանել։ Բայց զօրքն Հայոց ձեռնտուութեամբ Անտիգոնեանցն յԵրուսաղէմ մտանեն, ոչ ինչ ումեք վնասեալ, բայց միայն զՀիւրկանու զինչսն առնուին աւելի քան զերեքհարիւր քանքար։ Եւ ընդ գաւառն ասպատակեալ զՀիւրկանեանսն առեալ աւերէին. և զՄարիսացւոց քաղաքն գերի առեալ, թագաւոր կացուցանելով զԱնտիգոնոս։ Եւ զՀիւրկանոս կապեալ ածեն Տիգրանայ հանդերձ գերութեամբն, և Տիգրան հրաման տայ Բարզափրանայ նստուցանել զգերին Հրէից որ ի Մարիսացւոց՝ ի քաղաքն Շամիրամայ» (Խոր. Բ. ԺԹ.)։

Ի. գլխոյն մէջ կը պատմէ Խորենացին այսպէս. «Հերովդէս անցեալ ի Հռոմէ առաջի Անտոնի և Կեսարու և Սինկղիտոսին՝ զինքեան միամտութիւն առ Հռոմայեցիսն պատմէ, և թագաւոր եդեալ Հրէաստանի յԱնտոնինէ՝ առնու իւր զօրավիգն օգնականութեան զԲենդիտեոս սպարապետ Հռոմայեցւոց զօրօք, ի պատերազմել ընդ զօրս Հայոց և քակել զԱնտիգոնոս։ Որոյ (Բենդիտեայ) հասեալ յԱսորիս՝ փախստական առնէ զզօրս Հայոց. և զՍիղոն թողեալ ընդդիմակաց Հայոց մերձ յԵփրատ, և զՊակարոս (Բակուր, զարքայորդին Պարթևաց, զոր Խորենացին կը կարծէ լինել Ասորւոց թագաւորի որդի, շփոթելով զնա ընդ Լիսանեայ որդւոյ Պտղոմեայ արքայի Լիբանանու) սպանեալ՝ դառնայ յԵրուսաղէմ ի վերայ Անտիգոնի։ Իսկ Հայոց միւսանգամ օգնականութիւն գտեալ ի Պարսից՝ դիմեալ ի վերայ Սիղոնի և փախստական ի Բենդիտեոս արկանեն, հեղումն արեանց առնելով անբաւս» (Խոր. Ի.)։

Ըստ ԻԱ. գլխոյն՝ Անտոնիոս կու գայ անձամբ ի Սամոսատ, և լսելով Տիգրանայ մահը՝ կ'առնու քաղաքը, և թողլով զՍոսիոս օգնական Հերովդի՝ ինքն կ'երթայ յԵգիպտոս առ Կղէոպատրա։ Սոսիոս կ'առնու զԵրուսաղէմ և սպաննելով զԱնտիգոնոս՝ կը թագաւորեցունէ զՀերովդէս.—«Զչարեալ Անտոնինոս՝ բերմի հասանէ ամենայն զօրօք Հռոմայեցւոց. և հասեալ ի Տամշատ լսէ զմահն Տիգրանայ. և առեալ զքաղաքն և թողեալ զՍոսիոս զօրավիգն Հերովդի մարտ դնել ընդ Երուսաղեմի ի վերայ Անտիգոնի՝ և ինքն ի ձմերոց գնայ յԵգիպտոս։ Փութայր հասանել ըստ շամշութեան առն կնամոլոյ, ցանկութեամբ ի Կղէոպատրեայ գշխոյն Եգիպտացւոց։ Այս Կղէոպատրեայ դուստր էր Պտղոմէոս Դիոնիսի, թոռն Պտղոմայիդ Կղէոպատրայ և Հերովդի յոյժ սիրելի. վասնորոյ առաւել ևս յանձնէ Անտոնինոս զՀերովդէս Սոսեայ։ Որ և մարտուցեալ իսկ քաջապէս՝ առնու զԵրուսաղէմ, և սպանեալ զԱնտիգոնոս՝ թագաւորեցուցանէ զՀերովդէս ամենայն Հրէաստանի և Գալիլեայ» (Խոր. Բ. ԻԱ.)։ Խորենացւոյն այս երկու գլուխներն, Ի. և ԻԱ, համառօտութիւն են Յովսեպոսի Նախնեաց Պատմութեան ԺԴ. գրոց ԻԶ.—ԻԸ. գլուխներուն։ Յովսեպոսի պատմութիւնն է, թէ Հերովդէս Անտոնիոսի և Աւգոստեայ միջնորդութեամբ կ'առնու ծերակուտէն զթագաւորութիւնն Հրէաստանի։ Իսկոյն Բենտիդիոս կը ղրկուի զօրօք. Պարթեւք կը յաղթուին. Բակուր կ'սպանուի, Բենտիդիոս կը խաղայ Երուսաղեմի վրայ Անտիգոնոսի դէմ, կը թողու զՍիղոն սակաւուք. Հրեայք, այսինքն կուսակիցք Անտիգոնոսի (և ոչ Հայք, որպէս կամի Խորենացին), կը հալածեն զՍիղոն, որ կ'երթայ առ Բենտիդիոս. Անտոնիոս կու գայ անձամբ, և յետ առման Սամոսատայ կը մեկնի յԵգիպտոս, թողլով զՍոսիոս օգնական Հերովդի։ Սոսիոս կ'առնու զԵրուսաղէմ, և բռնելով զԱնտիգոնոս կը տանի առ Անտոնիոս, որ կու տայ գլխատել զնա.—«Գութն ընդ աղէտս Հերովդի, ասէ Յովսեպոս, եւ Անտոնեայ ջանալ օգնել նմա։ Ի նոյն միտս էր և Աւգոստոս։ Անտոնիոս յաւել ասել, թէ վասն պատերազմին ընդդէմ Պարթեւաց՝ կարեւոր էր կացուցանել զՀերովդէս թագաւոր Հրէաստանի։ Հաւանեցաւ ծերակոյտն, և անդէն Բենտիդիոս առաքեցաւ զօրօք վանել զՊարթեւս յերկրէն Ասորւոց։ Եմուտ նա ի Հրէաստան պատրուակաւ օգնելոյ Հերովդեանց, և առեալ կաշառ յԱնտիգոնեայ՝ մեկնեցաւ։ երթալ ազատել զքաղաքսն յորս ասպատակէին Պարթեւք, թողեալ զՍիղոն դոյզն գնդաւ զօրավիգն Հերովդի։... Հրեայք կողմանն Անտիգոնեայ հալածեցին զՍիղոն, որ չոգաւ առ Բենտիդիոս, զի հանդերձեալ էր սա խաղալ ի վերայ Պարթեւաց։... Պարթեւք մատնեցան ի պար-

տուեթիւն մեծաւ պատերազմաւ, ուր Բակուր սպանաւ, և Անտոնիոս յետ առնլոյ զՍամոսատ՝ մեկնեցաւ յԵգիպտոս, յանձն արարեալ զՀերովդէս Սոսեայ, որ առ զԵրուսաղէմ… և կալեալ զԱնտիգոնոս տարաւ առ Անտոնիոս, որ խաբեաց զնա յուսով մինչև եւ հատանել զգլուխ նորա»։

Ինչպէս կը տեսնուի այս քաղուածէն՝ Խորենացին չտարբերեր Յովսեպոսէ՝ բայց միայն համառօտութեամբն, և այնու միայն որ այս արշաւանաց ժամանակ (36) Հռոմայեցւոց դէմ ոսոխ կը դնէ զՏիգրան, որ արդէն մեռած էր (54), կամ զՀայս, որ գէթ առ երեսս բարեկամ և դաշնակից էին Հռոմայեցւոց։ Արտաւազդ, որդին և յաջորդ Տիգրանայ, իւր հօրը պարտութենէն հետէ չհակառակեցաւ Հռոմայեցւոց բաց ի մի անգամէն, երբ իւր 6,000 հեծելովք թողուց զԱնտոնիոս և մեկնեցաւ, ինչպէս արդէն տեսանք։

Խորենացին իւր Բ. դպրութեան ԻԲ. գլուխը կ՚սկսի Արտաւազդայ պատմութեամբ տալով. «Հայոց թագաւորէ Արտաւազդ որդի Տիգրանայ», և բերելով ներքին սովորութիւն մի իբրև հին օրէնք՝ կը յարէ. «Սա ժառանգեցուցանէ զեղբարս իւր և զքորս ի գաւառս Աղիովտի և Առբերանոյ, թողլով ի նոսա զմասն արքունի որ ի շէնս այնմ գաւառաց, հանդերձ առանձին մտից և ռոճկաց, ըստ օրինակի ազգականացն որ ի կողմանս Հաշտենից. որպէս զի քինել նոցա պատուականագոյն և առաւել թագաւորազնն քան զայնս Արշակունիս, միայն օրինադրէ ոչ կեալ յԱյրարատ ի բնակութիւն արքայի»։ Զեղբարս, զքորս, նաև զորդիս անգամ, բաց յանդրանկէն, հեռացունելու բարբարոս սովորութիւնն, զոր իբրև օրէնք Արշակունի թագաւորաց կը դնէ Խորենացին, ինչպէս այլուր ըսուեցաւ՝ կը թուի մեզ երկբայելի, այնու մանաւանդ որ Խորենացին կ՚ընծայէ զայն իւր դիւցազնին Վաղարշակայ, որոյ գոյութիւնն, ինչպէս արդէն տեսանք՝ կը թուի լինել ընդ կասկածանօք։

Խիստ Մովսէս, որ միշտ քաջ և աշխարհակալ իշխաններ կը խնդրէ տալ օրինակ իւր ընկճեալ, նուաճեալ և վհատեալ ազգին (Խոր. Ա. Ա.), չկրնալով լռել կամ ծածկել զԱրտաւազդայ պարտութիւնն և զձերբակալութիւն, որ հակառակ էին իւր նպատակին՝ որպէս թէ ի վրէժ այն ձաղանաց՝ կը դնէ սաստիկ պարսաւ վարուց և գործոց դժբախտ թագաւորին։ Կը ցուցնէ զնա ամենևին անմասն ի քաջութենէ. «Սա, ասէ, ոչինչ գործ արութեան և քաջութեան եցոյց. այլ ուտելեաց և ըմպելեաց պարապեալ, մօրից և եղէգնապուրակաց թափառեալ շրջէր և առապարաց, զիշավայրիս և զխոզս արածելով. զիմաստութենէ և զքաջութենէ և զբարի յիշատակաց անփոյթ արարեալ, ծառայ և ստրուկ արդարև որովայնի

*չինելով՝ զաղբիւս մեծացուցանէր»։ Մինչ Խորենացին, աւելի քան հինգ հարիւր ամօք յետոյ քան զԱրտաւազդ, ընծայեցուցանէ մեզ զԱրտաւազդ «զիմաստութենէ և զքաջութենէ անփոյթ, ծառայ և ստրուկ որովայնի»՝ պատկառելի յոյժ հեղինակ մի, Պլուտարքոս, գրեթէ ժամանակակից Արտաւազդայ, կը կոչէ զնա նշանաւոր գրիչ, քաջ հմուտ յոյն դպրութեան (Պլուտ. Կրաս. 33)։*

*Ըստ Խորենացւոյն՝ «Արտաւազդ բասրելով յիւրոց զօրացն վասն առաւել պղերգութեանն և սաստիկ որկրամոլութեանն, մանաւանդ զի և զՄիջագետս Անտոնի հանեալ էր ի նմանէ՝ զայրացեալ հրաման տայր զօր յարուցանել զբիւրաւորս Ատրպատական նահանգին, զբնակիչս լերինն Կովկասու հանդերձ Աղուանիւք և Վրօք. խաղայ իջանէ ի Միջագետս և հալածական առնէ զզօրս Հռոմայեցւոց։ Մռնչեալ առիւծաբար գազանութեամբ Անտոնինոս (կարդա Անտոնիոս), առաւել ևս թունեալ ի Կղէոպատրայ, քանզի (սա) քէն պահէր վասն ըլկանաց իւրոյ հանոյն որ ի Տիգրանայ, և ոչ միայն Հայոց, այլ բազում թագաւորաց լինէր մահաբեր, զի նոցայոցն տիրեսցէ իշխանութեանց։ Սակս որոյ բազում թագաւորս սպանեալ Անտոնի՝ ի Կղէոպատրա հաւատայ զնոցա իշխանութիւնն, բայց ի Տիւրոսէ և ի Սիդոնէ և որ միանգամ ընդ Ազատ գետովն էին։ Եւ առեալ զբազմութիւն զօրացն՝ դիմէ ի վերայ Արտաւազդայ. և անցեալ ընդ Միջագետս՝ կոտորէ անհնարին զզօրս Հայոց և ձերբակալ առնէ զարքայն նոցա։ Եւ դառնայ յԵգիպտոս պարգևել Կղէոպատրի զԱրտաւազդ որդի Տիգրանայ, հանդերձ բազում ընչիւք յանկածէ պատերազմին» (Խոր. Բ. ԻԲ, ԻԳ.)։*

*Զարմանալի է որ Խորենացին, իբր թէ անգէտ ժամանակակից պատմութեան, Յովսեպոսի իսկ, զոր գիտէ այնպէս ճարտարութեամբ օրինակել՝ կը մոռնայ զԱրտաւազդայ օգնելն Անտոնիոսի յարշաւանս նորա Պարթևաց դէմ, զգալ նորա ի Հայս, և դաւով բռնելով զԱրտաւազդ հակառակ իրաւանց ազգաց՝ կապեալ ոսկի շղթայիւք տանելն յԱղեքսանդրիա ի ձաղանս և սպանանելն զնա չարաչար։ Խորենացին զանց առնելով զայսու ամենայնիւ՝ կու տայ Արտաւազդայ յիմարաբար խաղալ ի Միջագետս ընդդէմ Հռոմայեցւոց, և իբրև թէ ի ճակատու յաղթուած՝ տարուել իբրև գերի առ Կղէոպատրա։*

*Չէ ամենևին պատմական, թէ Հռոմայեցիք հանին յԱրտաւազդայ զՄիջագետս։ Հայք վաղուց առ Տիգրանաւ կորուսած կամ թողուլ ստիպուած էին այն երկիրներն։ Միջագետք, այսինքն արևմտեան մասն այն երկրին, Ուռհայաստան և Միգդոնիա հանդերձ Ադիաբենիւ, էին յայնժամ ուրոյն թագաւորութիւններ ընդ վերին իշ-*

խանութեամբ Պարթևաց, և ոչ իսկ Հռոմայեցի զօրք կար յայնժամ ի Միջագետս, որոց վրայ յարձակէր Արտաւազդ։ Դժբախտ Թագաւորն կը կենար հանդարտութեամբ յիւր երկրին, և եղաւ յանիրաւի զոհ վրէժխնդրութեան կատաղի Հռոմայեցւոյն։

Վիքդոր Տիւրիւի կը համառօտէ Անտոնիոսի յիմարութիւններն յարևելս զայս օրինակ, յիմարութիւններ՝ զորս կը թուի ակնարկել և Խորենացին. «Եթէ Թագաւորն Հայոց չէր թողեալ այնպէս վաղ զբանակն Հռոմայեցւոց իւրովք 6,000 հեծելովքն՝ ամօթալի դարձն Անտոնիոսի չլինէր այնպէս ձախող։ Անտոնիոս յամեցոյց զքէն վրիժուն, զի մի բռնադատեսցի յապաղել զերթն իւր առ Կղէոպատրա։... Ի զուր զօգ ի նմին տարւոջ (36) բախտն մատոյց նմա առիթ նորոգելոյ զիւր կորուստն։ Ի մէջ Թագաւորին Մարաց և Հրահատայ յարեագժտութիւն վասն աւարաբաժնին, և զայրացեալ մարին՝ սպառնայր ձեռս տալ ի Հռոմայեցիս անդր։ Կղէոպատրա արգել զԱնտոնիոս անսալ հրաւիրանաց մարին, և ձգեաց զնա յԱղեքսանդրիա։.. Ցամին 35 Անտոնիոս առնէ պատրաստութիւն յԱսորիս, այլ չեթող նմա Կղէոպատրա։ Ի միւսում ամին ձեռն արկ միւսանգամ գործոյն, և եմուտ նախ ի Հայս, որոյ Թագաւորն առ ի տալ տեղի մրրկին՝ չագաւ ի կոչ նորա։ Այն ինչ հասեալ նորա ի բանակն՝ լեալ ձերբակալ՝ ածաւ, կապեալ ոսկի շղթայիւք, յԱղեքսանդրիա, ուր իբրև ի մայրաքաղաք արևելից եմուտ Անտոնիոս ձաղել։ Հռոմ զչարէր ընդ գործս Անտոնեայ իբրև հակառակ իւրոց իրաւանց, այլ Անտոնիոս մոռացեալ էր թէ էր Հռոմայեցի։ Ետ նա անուն Թագաւորի Աղեքսանդրի և Պտղոմեայ, երկուց որդւոցն որ եղեն նմա ի Կղէոպատրայ. առաջնումն ետ հանդերձ Մարօք զՀայս և զԹագաւորութիւնն Պարթևաց. երկրորդումն՝ հանդերձ Փիւնիկեաւ զԿիլիկիա և զԱսորիս. քոյր նոցա Կղէոպատրա ընկալաւ վարձանս զԿիւրենէ։ Ցեառոյ յանգիման կացոյց ժողովրդեան զերկոսին իշխանսն—զԱղեքսանդր, որ կրէր պատմուճան մարական և խոյր, և զՊտղոմէոս՝ ըղգեցեալ ամզան, պսակ ի գլուխ զօրէն պայազատացն Աղեքսանդրի։ Իսկ ինքն փոխանակ հռոմէական պատմուճանին արկեալ էր վերարկու ի ծիրանւոյ։ Էր տեսանել զնա իբրև զԹագաւորս արևելից պսակեալ թագաւ, գաւազան ոսկի ի ձեռին և նրան յազդեր. և կամ առընթեր Կղէոպատրայ շուրջ եկեալ ի հրապարակս Աղեքսանդրեայ, յաճախագոյն ևս նստեալ ի կառս, իբրև զԴիոնեսոս, զարդարեալ պսակօք, կօշիկ գուսանաց յոտս, Թագ ի գլուխ յոսկւոյ և նիզակ չաստուծոյն գինւոյ ի ձեռին։ Այսպէս գնայր Անտոնիոս յարևելս ի հեճուկս Հռոմայ, մինչև լեալ ատելի և՛ Հռոմոց և՛ իշխանակցին

խուրում Աւգոստեայ՝ կործաւ ի ճակատուն Ակտիոնի ընդդէմ Աւգոստեայ, որ նովին եղև միահեծան» (31)։

Խորենացւոյն պատմութեան Բ. դպրութեան ԻԳ. գլխէն մինչև ի գլուխն ԼԴ. ունինք զպատմութիւն նախ՝ Արշամայ ուրումն, և ապա՝ որդւոյ նորա Աբգարու, իբրև Թագաւորաց Հայոց զկնի Արտաւազդայ։

Ինչ որ Խորենացին կը պատմէ զյաջորդաց Արտաւազդայ յԱրշամայ և անդր՝ նոյնպէս հակառակ է արտաքին, մեծաւ մասամբ ժամանակակից պատմութեան, այնպէս որ եթէ ընդունինք զմին յերկուց անտի իբրև վաւերական՝ հարկ է մերժել զմիւսն իբրև անվաւեր։ Ի զուր է—չկրնալով մերժել զարտաքինն, արդարացուցանելու համար զԽորենացին, բաժնելով զյայնժամու Հայաստան երկու, վերին և ստորին, ինչպէս կ'ընէ Չամչեան—ինչ որ արտաքինք կը պատմեն զՀայոց՝ դնել կատարուած ի վերին Հայս, և ինչ որ Խորենացին կը պատմէ՝ ի ստորին Հայս։ Այսպիսի բաժանումն ոչ միայն բռնի է, այլ և օտար պատմչաց երկու դասին ևս, (Խորենացւոյն և արտաքին պատմչաց,) որք իրենց պատմութեան ասպարէզ գիտեն զողջոյն զՄեծ Հայս։ Եւ ոչ առողջ մտաց է դարձեալ յերկուս ոտս կաղալ իբրև զԳաթըրճեան, զերկոսին պատմութիւնսն միանգամայն ուրոյն ուրոյն բերելով ի մէջ, առանց համարձակելու տալ վճիռ ըստ օրինաց անաչառ քննադատութեան ի նպաստ միոյն կամ միւսոյն, ի շնորհուկս ում, չենք գիտեր։ Մեք զհետ երթալով առածին, թէ Սիրելի է Պղատոն, բայց առաւել սիրելի ճշմարտութիւն, երկու կողման ևս ճոխութիւնն դնելով ի կշիռս՝ առինք զարտաքինն ոչ իբրև նախամեծար, այլ իբրև միայն ճշմարիտ։ Հոս հարկ կը համարինք սակայն արկանել ընդ անաչառ քննութեամբ մեր ծերունի պատմիչն, և առ այս բաւական է միայն ցուցնել, թէ ինչ աղբերէ կ'առնու նա և ինչ արուեստիւ։

Խորենացւոյն Բ. դպրութեան ԺԳ. գլխէն մինչև ԻԳ. բաւական յայտնի տեսնուեցաւ, թէ աղբիւր Խորենացւոյն ինչպէս Տիգրանայ նախորդներուն պատմութեան համար չէր Մարիբաս՝ նոյնպէս Տիգրանայ համար չէր Ափրիկանոս, այլ գրեթէ միայն Յովսեպոս, և այն՝ կրճատեալ և այլայլեալ։ Արշամայ և Աբգարու պատմութեան համար ևս, զոր կ'ամփոփէ Խորենացին ԻԴ. գլխէն մինչև ի գլուխն ԼԴ՝ ասեմք զնոյն, այսինքն թէ աղբիւր Խորենացւոյն ո՛չ թէ Ափրիկանոս է և ոչ այլ ոք, այլ գրեթէ միայն Յովսեպոս։

Ըստ Խորենացւոյն՝ յետ Արտաւազդայ «զօրքն Հայոց հրամանաւ Արշեզի—(իմա Որոդայ, այն է Արշակ ԺԴ. 60—36, քանզի չիք Թագաւոր Պարթևաց Արշէզ անուն, ո՛չ ըստ պատմագրաց և

ոչ ըստ դաՀեկանաց. Խորենացին է, որ ինչպէս այլուր ասացաւ, չէ յայտ ուստի առնելով՝ կը դնէ այլ իմն կարգ Պարթեւ թագաւորաց, տարբեր անուամբք և թուականօք)—թագաւորեցուցանեն ի վերայ ինքեանց զԱրջամ որ և Արշամ, որդի Արտաշիսի եղբօր մեծին Տիգրանայ, Հայր Աբգարու»։ Զսա, ասէ, ոմանք յԱսորւոց կոչեցին Մանովայ»։ Երկու անուն ունենալ, կը յաւելու պատմիչ մեր, սովորութիւն էր նաև այլոց ազգաց, զորօրինակ Հերովդէս-Ագրիպպաս, Տիտոս-Անտոնինոս, և կամ Տիտոս-Յուստոս։ Այս Արշամ, ասէ Խորենացին, չկրնալով գտնել օգնութիւն Արշեզի յաջորդէն յԱրշաւրէ (այն է ի Հրահատայ Դ, այսինքն Արշակ ԺԵ. 36—4) որ էր մանուկ, «ընդդէմ կալ Հռոմայեցւոց՝ խօսի ընդ նոսա ի Հաշտութիւն խաղաղութեան, տալով Հարկս ի Միջագետաց և ի կողմանց Կեսարու ի ձեռն Հերովդի, և, կ'ըսէ, այս եղև սկիզբն Հայոց մասնաւոր մտանել ընդ Հարկաւ Հռոմայեցւոց»։ Խորենացին չգիտեր, թէ արդէն Տիգրան մեծ՝ դաշամբն ընդ Պոմպէի (64)՝ Հրաժարած էր ո՛չ ի Միջագետաց միայն, այլև ուրիշ երկիրներէ, որոց տիրած էր աշխարհակալութեամբ, ինչպէս արդէն յիշուեցաւ։ Որովհետև բոլոր Պաղեստին, սահմանակից Ասորւոց և Միջագետաց, յանձնուած էր Հերովդի յՕկտաւեայ (Օգոստոսէ)՝ չէ անհաւանական թէ Հերովդէս ունէր ազդեցութիւն մեծ Միջագետաց և հիւսիսային Ասորւոց վրայ ևս (ՈւռՀայաստան, Միգդոնիա), և Հարկք այն կողմանց կ'առնուէին ի ձեռն Հերովդի։ Չէ ուրեմն սխալ բան Խորենացւոյն, թէ Արշամ սկսաւ տալ «Հարկս ի Միջագետաց ի ձեռն Հերովդի», և թէ «ի ձեռն Հրեշտակաց յղէ առ կայսրն ի Հռոմ. զի մի գնա ընդ իշխանութեամբ Հերովդի արասցէ. իսկ կայսրն ոչ միայն զԱրշամ չազատէ յիշխանութենէ Հերովդի. այլ և զամենայն Միջերկրեայս (իմա զՄիջագետս) նմա Հաւատայ»։ Այսպէս Խորենացին շատ գեղեցիկ կը ցուցնէ զպայնժամու Հանգամանս Հիւսիսային Միջագետաց, այն է Ասորւոց, ՈւռՀայաստանի և Միգդոնիայ (Մծբնայ) ընդ Հռոմայեցւովք։ Սխալ Խորենացւոյն յայնմ է, որ Համարելով զՈւռՀայաստան և զՄիգդոնիա ընդ իշխանութեամբ Հայոց, ինչպէս էին առ Տիգրանաւ և, ըստ իւր պատմութեան, առ Վաղարշակաւ և առ յաջորդօք նորա՝ զիշխանսն ՈւռՀայաստանի (Մանովէ, Աբգար) կը կարծէ լինել Հայոց թագաւորներ։ Այսպէս Խորենացւոյն ո՛չ թէ պատմութիւնն է սխալ, այլ Հարաւային մասանց Հայոց նոր յարաբերութիւնն, զոր Խորենացին կը շփոթէ ընդ Հնոյն։ Չէ և այն զարմանալի, թէ Արշամ,. կամ ո՛վ ոք և էր, իշխանն ՈւռՀայաստանի, տեսնելով զՀերովդէս գրեթէ արձակ իշխան այն կոմանց, նաև իւր երկրին՝ «երկրպագէ Հերովդի իբրև տեառն ամե-

նայնիւ։ Զայսոսիկ ևս կը գտնենք առ Յովսեպոսի, թէպէտ ոչ բան առ բան և ի միում վայրի, այլ ցիր առ անդ։ Համառօտիւ՝ բանք Խորենացւոյն յայս երկու գլուխս (ԻԴ, ԻԵ.) հայրին յՈւռհայաստան, և ոչ բնաւին ի Հայս, որոյ պատմութիւնն այլ է, ինչպէս տեսանք, և զոր կը թուի Խորենացին մեր անգիտանալ ի սպառ։

Խորենացին նոյն ԻԴ. գլխոյն մէջ Ենանոս անուն հրէի ումեք, ըստ Խորենացւոյն՝ Բագրատունւոյ—քանզի ամէն հրեայ ի Հայս ըստ Խորենացւոյն է Բագրատունի (տես և գլ. ԼԴ)—կու տայ արձակել զՀիւրկանոս քահանայապետ (զոր կը համարի Բարզափրանայ Ռշտունւոյ, սպարապետին Տիգրանայ գերեալ առ Տիգրանաւ), և այս պատճառաւ, նաև ըստ ամբաստանութեան Զօրայի նահապետի Գնթունւոյ՝ որպէս թէ Արշամ զայրանալով Ենանոսի՝ կը տանջէ զնա (զիւր թագակապ ասպետն) և կ'սպառնայ սպանանել զորդիս նորա, մինչև առ աչհին ուրանալ նմա զհրէութիւն։ Զայսմ ամենայնէ խօսուած է երկար յառաջնում մասին Պատմութեան մերոյ (էջ 170—179). ուստի աւելորդ կը համարինք աստ կրկնել միւսանգամ։

Գալով Հիւրկանու արձակման՝ կ'ըսենք թէ այս դժբախտ քահանայապետին վրայ Յովսեպոս, ոչ հեռի ժամանակաւ և հմուտ իրաց Հրէից՝ կը խօսի երկար և բոլորովին տարբեր, ինչպէս արդէն յիշուեցաւ։ ԶՀիւրկանոս գերի եկած ի Հայս առ Տիգրանաւ կը պատմէ նաև Բուզանդ. սակայն յայտնի է, թէ ինչպէս Խորենացին՝ նոյնպէս սա կ'առնու ուրիշ աղբերէ, որ չկարէ լինել ստոյգ քան զՅովսեպոս, որ իւր ազգին երևելի քահանայապետին պատմութիւնը կ'ընէ գրեթէ ժամանակակից մարդոց։ Նոյնպէս Զօրայի Գնթունւոյ ամբաստանութեան համար զԵնանոսէ, այսինքն զԱնանիայէ ումեմնէ հրէէ՝ կ'ըսենք, թէ կարէ լինել ստոյգ, սակայն կը վերաբերի Ուռհայաստանի և ոչ Հայոց։ Զիարդ և իցէ՝ ունենալով զՅովսեպոս՝ ստիպեալ եմք ասել, թէ Խորենացւոյն պատմութիւնն, ինչպէս նաև Բուզանդայն, զՀիւրկանոսէ՝ չեն ստոյգ։

(Զայս ըսինք Հիւրկանու համար՝ յեցեալ ի վկայութիւնն Յովսեպոսի, որ էր հրեայ և ժամանակակից։ Նոյնը կ'ըսենք հրեայ գերութեան համար, զոր ըստ Խորենացւոյն բերաւ Տիգրան Մարիսացւոց քաղաքէն։ Նախ՝ զՄարիսա քաղաք երկրին Յուդայ, ըստ ոմանց Սամարիա, գերեցին և քանդեցին ո՛չ թէ Տիգրան կամ Հայք, այլ Պարթևք 39-ին նախ քան զՔրիստոս, մինչև Տիգրան մեռած էր 55-ին։ Երկրորդ՝ Տիգրան չմտաւ երբէք Պաղեստին կամ Հրէաստան, ուստի կրնար բերել այնչափ հրեայ գերիներ, մինչև զետեղել զնոսա այլևայլ քաղաքներ։ Զենք սխալիր եթէ ըսենք, թէ հրեայ գերու-

թեան սկիզբն ի Հայս կ'երթայ մինչև Նաբուգոդոնոսորայ ժամանակ։ Չէ անհաւանական, թէ հին Հայք, այն է Արարատեան տէրութիւնն, ունէր եթէ ոչ դաշնակցութիւն, գոնէ սերտ բարեկամութիւն ընդ Բաբելոնի. և առ այս ըստ բաւականին հաւանականութիւն կու տայ ակնարկութիւն Քսենոփոնի ի խրատսն Կիւրոսի, թէ հայրն Տիգրանայ առաջնոյ չգնաց՝ բայց մեծ դժուարութեամբ Մարաց և Պարսից հետ ընդդէմ Բաբելոնի։ Զիարդ և իցէ՝ կը թուի եթէ ոչ ստոյգ, գէթ հաւանական, բան Խորենացւոյն, թէ հին Արարատեան թագաւորներէն մին, Հրաչեայ, որ է թերևս Ուրշայն սեպաձև արձանագրութեանց և կամ որ և իցէ Արարատեան թագաւոր մը՝ խնդրեց Նաբուգոդոնոսորէ հրեայ գերիներ, որոց գլխաւորին անունն էր ըստ Խորենացւոյն Շամբաթ։

Թողունք Հրաչեայ և Շամբաթ անուններն, թողունք և Արարատեան թագաւորի մը խնդրելն հրեայ գաղթականութիւն ի Նաբուգոդոնոսորայ. տակաւին հաւանական կը թուի, թէ հիւսիսայինարևմտեան կողմն Արարատայ էր երբ Սիպերիա, ուր Բաբելոնի, թերևս նաև Ասորեստանի թագաւորք կը ղրկէին հրեայ գերիներ, և այսմ շատ յարմար կու գայ Սպեր անուն հիւսիսային-արևմտեան գաւառ Հայոց, որ ի վաղուց համարուած է երկիր Բագրատունեաց, կարծելով ծագմամբ հրեայ։ Այս դիտողութիւնն ըրինք առ այժմ իբրև ազգ, հաստատութիւնը թողլով ապագայ և աւելի ճշգագոյն հետազօտութեանց։ Բարեկամ մը սեպագիրներու ուսման հմուտ (յարգոյ Յովսէփ Վ. Սանտալճեան), թելադրեց մեզ այս դիտողութիւնը)։

Թողունք ուրիշ անհամաձայնութիւններ որ կան ի պատմութեան Խորենացւոյն ընդ Յովսեպոսի։ Ըստ Յովսեպոսի՝ Բարզափառնէս (ոչ Բարզափրան) էր սպարապետ Պարթևաց յարշաւանս նոցա ի Պաղեստին, և տակառապետն որ կը յիշուի՝ էր Բակուր, նոյնպէս Պարթև, և ոչ Գնէլ Հայ, ինչպէս տեսանք։ Յովսեպոս համակ Պարթևաց կու տայ՝ ինչ որ Խորենացին կ'ընծայէ Հայոց, և պատմութիւն Յովսեպոսի հաւատարմագոյն է։ Արդէն ըսինք, թէ Հայք ամենևին մասն չունեցան և չէին կրնար ունենալ Հռոմայեցւոց այն պատերազմներուն մէջ իբրև թշնամի նոցա, վասն զի 64-էն հետէ Հայք էին գէթ առ երեսս դաշնակից և բարեկամ Հռոմայեցւոց. ժամանակն ևս չյարմարիր, քանզի Կրասոսի արշաւանն եղաւ 54-ին, իսկ Անտոնիոսին՝ 36-ին, մինչ Տիգրան մեռած էր 55-ին։

Թէպէտ Արշամայ և Աբգարու վրայ գրուածներն չեն վերաբերիր մեզ, և կրնայինք բոլորովին թողուլ՝ բայց ցուցնելու հա-

մար, թէ Խորենացին կամ աղբիւր նորա որչափ կ'այլայլէ իւր աղբիւրն որ է Յովսեպոս՝ ցուցնենք թէ ինչ է ԻԵ. գլխոյն պատմութիւնն ըստ Յովսեպոսի։

ԻԵ. գլխոյն մէջ Խորենացին կը պատմէ գժտութիւն ինչ Արշամայ ընդ Հերովդի, և ակամայ հնազանդել նմա այս վերջնոյն, ինչպէս տեսանք և վերագոյնն.—«Յետ այսորիկ եղև խռովութիւն ի մէջ Հերովդի արքայի Հրէաստանի և մերոյն արքայի Արշամայ։ Քանզի Հերովդէս յետ բազում գործոց արութեանց, ձեռնամուխ լինի ի բարեգործութիւնս, (իմա ի մեծագործութիւնս), շինուածս բազումս առնելով յոլով քաղաքաց, սկսեալ ի Հռովմէ (!) մինչև ցԴամասկոս։ Խնդրեալ ի յԱրշամայ բազմութիւն արանց անարուեստից գործաւորաց, որով զԱսորւոց զԱնտիոքայ զանանց և զանկոխ հրապարակսն ի խոհերացն և ի տղմոցն՝ լցցէ։ Զոր չառեալ յանձն Արշամայ՝ զօր ժողովէ ընդդիմանալ Հերովդի, և ի ձեռն հրեշտակաց յղէ առ կայսր ի Հռոմ, զի մի՛ զնա ընդ իշխանութեամբ Հերովդի արասցէ։ Իսկ կայսրն ոչ միայն զԱրշամ չազատէ յիշխանութենէն Հերովդի, այլ և զամենայն Միջերկրայս (թուի ասել Միջագետս) նմա հաւատայ»։ Արդարև գիտենք Յովսեպոսէ, թէ Հերովդէս մեծամեծ շինութիւններ ըրաւ յօրևելս (Յովս., Նախն. պատմ. Հր. ԺԵ. 11, և Պատրզմ. ընդդէմ Հռոմ. Ա. 16), բայց ոչ սկսեալ ի Հռոմէ։ Նոյնպէս թէ Հերովդէս Անտիոքայ փողոցներն մաքրեց տղմէ և յատակեց հրապարակներն սպիտակ կճով՝ այս ևս է Յովսեպոսէ.—«Զմեծ հրապարակն Անտիոքայ Ասորւոց որ քսան վտաւանաւ երկայնութեան լի էր միշտ տղմով, մինչև չլինել մարթ անցանել՝ յատակեաց» (Յովս. Պատրզմ. Հր. ընդդէմ Հռոմ. Ա. 16, և Նախն. պատմ. ԺԶ. 9)։ Թէ այս շինութեանց համար Հերովդէս խնդրեց գործաւորներ յԱրշամայ, այսինքն յիշխանէն Ուռհայաստանի, և սա ոչ միայն յանձն չառաւ, այլև իշխեց ընդդիմանալ Հերովդի զօրօք, և ի ձեռն դեսպանաց խնդրեց ի կայսերէ չընել զնա հպատակ Հերովդի, բայց կայսր ոչ միայն չազատեց զնա Հերովդի իշխանութենէն, այլ մանաւանդ յանձնեց Հերովդի զՄիջագետս, և Արշամայ, իմա իշխանին Ուռհայաստանի տեսեալ զայս, «երկրպագէ Հերովդի իբրև տեառն ամենայնի»՝—այս ևս է Յովսեպոսէ, բայց այլազգ, և ո՛չ որպէս պատմէ Խորենացին։ Նախ առ Յովսեպոսի չիք բան զՀայոց, այլ զԱրաբացւոց, իմա զՈւռհայաստանէ, և ոչ Արշամ յիշուած է անդ, և չէր իսկ մարթ, քանզի չիք այնու անուամբ թագաւոր ո՛չ Հայոց և ոչ Ուռհայաստանի, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։

Ըստ Յովսեպոսի՝ Հերովդի գժտութիւնն էր Արաբացւոց հետ,

այսինքն Ուռհայեցւոց, զորս կոչէ Յովսեպոս Արաբացիս, քանզի Միջագետաց այն մասն, իմա Ուռհայաստան, Միգդոնիա՝ կը կոչուի այն ժամանակի պատմութեան մէջ Արաբիա, վասն զի բնակիչքն էին մեծաւ մասամբ արաբացի։ Աբգար կամ Աքպար, Ուռհայաստանի իշխանն կը կոչուի հռոմայեցի պատմիչներէ (Տակիտոս) արաբացի, և Բուզանդ կ'անուանէ Ասորւոց այն կողմերն (Եդեսիա, Մծբին)՝ Արուեստան, որ կը նշանակէ Արաբիա (Բուզ. Դ. ԻԱ.), ինչպէս Արուաստան՝ ըստ մերոց է Արաբացի։ Իսկ պատճառ գժտութեանն էր ըստ Յովսեպոսի այս.—յետ որոյ Օգոստոս Տրաքոնացւոց երկիրն, որ էր ի մէջ Հրէաստանի և Միջագետաց, տուաւ Հերովդի՝ աւազակաբարոյ բնակիչք երկրին, որ սովոր էին կեալ յելուզակութեամբ, հալածուելով ի Հերովդէ՝ կը գտնէին պաշտպանութիւն յԱրաբացւոց, այսինքն ի բնակչաց Ուռհայաստանի։ Հերովդէս կը պահանջէր յիշխանէ նոցա տալ ի ձեռս փախստեայ աւազակներն, որ իւր հպատակներն էին, նաև զարծաթն 160 քանքար, զոր Հերովդէս փոխ տուած էր նոցա։ Երբ Արաբացիք (Ուռհայեցիք) սկսան դէմ դնել Հերովդի զօրօք, և կը գլանային հատուցանել զփոխն և տալ աւազակներն զորս կը պահանջէր Հերովդէս՝ ծագեցաւ պատերազմ, զորմէ երկար կը պատմէ Յովսեպոս (Նախն. պատմ. ԺԶ, 13. Պարզմ. ընդդէմ Հռոմ. Ա. 14, և այլուր)։ Աւազակներն, զորս կը պահանջէր Հերովդէս յԱրաբացւոց Ուռհայի՝ լինին առ Խորենացւոյն գործաւոր, և վասն այսորիկ լինի պատերազմն։ Հերովդէս բողոքեց հռոմայեցի կուսակալներուն որ ի Միջագետս, և որոշուեցաւ դատն ի նպաստ Հերովդի. Արաբացիք չանսացին վճռոյն. երկուստեք դեսպանք գացին ի Հռոմ առ կայսր, և Օգոստոս տուաւ իրաւունս Հերովդի։ Զայս տեսնելով Արաբացիք (ըստ Խորենացւոյն՝ Արշամ) ստիպուեցան հնազանդիլ Հերովդի ակամայ. այս է Արշամայ ակամայ հնազանդութիւնն Հերովդի, կամ որպէս յետոյ ասէ՝ «երկրպագելն Արշամայ Հերովդի իբրև տեառն ամենայնի», կամ որ նոյն է ըստ Յովսեպոսի—«Այս ցածոյց զամբարտաւանութիւնն Արաբացւոց այնպէս՝ մինչև համարել զՀերովդէս իւրեանց պաշտպան» (Յովս. Պատ. Հր. ընդդէմ Հռոմ. Ա. 14)։ Ահա այս է գժտութիւնն Արաբացւոց։

Խորենացին այս Բ. դպրութեան ԻԶ. գլխէն մինչև ի գլուխն ԼԵ. կը դնէ զպատմութիւն Աբգարու, իբրև որդւոյ Արշամայ արքայի Հայոց, յաջորդի Արտաւազդայ։ Արդարև յետ համառօտելոյ զպատմութիւն Արշամայ իբրև Հայոց թագաւորի նախընթաց երկու գլուխներուն մէջ՝ հարկ էր գալ ի պատմութիւն որդւոյ նորա և յաջորդի։ Արդարև Աբգար (ասորի և ոչ Հայ) էր իշխան և ոչ թագաւոր Ուռ-

Հայաստանի, ինչպէս գրուած է նաև ի կասկածեալ նամակին նորա առ Քրիստոս — «Աբգար Արշամայ, իշխան աշխարհի»։ Այս երկու բառք թարգմանութիւն են յունարէն τόπαρχος անուան, որ կը նշանակէ տեղապետ, որպիսի էին իշխանք Ուռհայաստանի, և կը թուի լեալ որդի և յաջորդ Մանովայ և ոչ Արշամայ, անուն՝ որ կը թուի լինել պիտակ։ Աբգարէ որպէս թէ առ Քրիստոս գրուած նամակին սկիզբը կարդալով «Աբգար Արշամայ»՝ Խորենացին կամ այլ ոք կարծած է, թէ Արշամ (բուն անուամբ Մանովէ) էր հայր Աբգարու. բայց ասորերէն հարազատ օրինակ նամակին ունի փոխանակ Արշամայ՝ Ուշամա, այսինքն թուխ, քանզի Ուռհայաստանի իշխաններէն ոմանք իրենց բուն անուան հետ ունէին նաև յորջորջանաց անուն կամ վերադիր, ինչպէս Սոմախա, Ուշամա, Սևերոս, այլովքն հանդերձ։

Աբգարու կամ մանաւանդ Աբգարներու վրայ պատմուած է բազում ինչ խառն ի խուռն։ Խորենացին չհամարելով բաւական հայացունել զԱբգար՝ կը ջանայ հայացունել նաև զանունն, ստուգաբանելով *աւագ այր*, զոր որպէս թէ Ասորիք չկարելով ուղիղ հնչել՝ աղաւաղած էին *յԱբգար*.—«Այս Աբգարէս կոչիւր աւագ այր վասն առաւել հեզութեանն և իմաստութեանն, որում յետոյ և տիքն. զայս ոչ կարելով ուղղախօսել Յունաց և Ասորւոց՝ կոչեցին Աբգարիոս» (Խոր. Բ. ԻԶ.)։ Լանկլուա չընդունիր զայս.—«ստուգաբանութիւն Աբգար անուան զոր տայ աստ Խորենացին՝ սխալ է, և թէպէտ Յուլիոս Ափրիկանոս առ Եւսեբեայ (Քրոն. Բ.) թուի հաստատել զմեկնութիւն նորա յասելն, Ցեդեսիա թագաւորէ Աբգար, այր կատարեալ»՝ այլ չիք պատճառ ընդունելոյ»։ Զենք սխալէր կարծեմ, եթէ նայելով Տակիտոսի ուղղագրութեան, որ կը գրէ Աքպար՝ համարինք սեմական բառ, իբրև բաղդատական *քէպիր—մեծ* բառին, որպէս թէ մեծագոյն, որ կը մերձենայ Խորենացւոյն աւագ բառին։

Աբգարներու վրայ, ըսինք, շատ բան ըսուած է խառն ի խուռն. բայց Ասեման, կը թուի մեզ, վերցուց խառնակութիւնը, հանելով հին ասորի աղբիւրներէ Աբգարեանց ազգաբանութիւնը։ Ըստ պատմութեան Ասորւոց, զոր կը բերէ անուանի մատենագիրն ասորի Ասեման, որ ծաղկեցաւ յանցեալ դարու, առնլով Դիոնեսիոսէ Ասորւոյ, որ նստաւ պատրիարք Ասորւոց Յակոբիկեանց 818-ին՝ Եդեսիա կամ Ուռհա ունեցած է ի վաղուց թագաւորներ կամ իշխաններ Մանովէ և Աբգար անուն մինչև 217, ուր դադրած է այս իշխանութիւնն, այսինքն գրեթէ ի սկզբան հարստութեանն Սասանեանց։ Որովհետև ըստ աւանդութեանն զոր կը բերէ Ասեման, Ուռհայաստան և Թա-

գաւորք նորա էին ասորի՝ կը հետևի թէ Աբգար ևս էր ասորի և ոչ հայ։ Չամչեան (Պատ. Հյ. Ա. էջ 574) կը համարի այն ասորական աւանդութիւնն առասպել։ Բայց և այնպէս ոչ հաւանականութիւն միայն, այլ և ստուգութիւնն յայն կողմն է՝ թէ Մանովէք կամ Աբգարք, յորոց մին է այն որ կը յիշուի հոս՝ էին ասորի, և կոչուած են նաև արաբացի. զպատճառն արդէն ըսինք։

Ինչ որ Խորենացին կը պատմէ զԱբգարէ ԻԶ.—ԻԹ. գլուխներուն մէջ, զորօրինակ զխռովութիւնն ի մէջ Աբգարու և Հերովդի, զկռիւն և զյաղթութիւն, զձաղումն հրեշտակաց նորա ի Հռոմ, ըզգայրանալն Աբգարու և խորհելն ապստամբել ի Հռոմայեցւոց, զերթալն նորա խաղաղել Պարթևաց յաջորդութեան վէճը, զօգնել նորա Արտաշէս արքայի ընդդէմ որդւոյն Հերովդի, զառաքումն երկու իշխանաց առ Մարինոս կուսակալ Հռոմայեցւոց ի Փիւնիկէ, այլովքն հանդերձ՝ կը թողունք, իբրև վերաբերեալ (եթէ ճշմարիտ ևս են), Ուռհայաստանի կամ Ասորւոց և ոչ Հայոց, և կու գանք ի պատմութիւն դարձին Աբգարու։ Այս պատմութիւն ևս, ճշդիւ խօսելով՝ չունի ամենևին վերաբերութիւն Հայոց. բայց որովհետև դարձն Աբգարու իբրև առաջին հայ թագաւորի ի քրիստոնէութիւն, ի վաղուց անտի մեծ համբաւ ըրած է յազգին՝ հարկ կը համարինք այս կարևոր դիպաց վրայ խօսել ըստ բաւականին, մանաւանդ որ պատմութիւնն ունի կէտեր՝ որ առաջի անաչառ քննադատութեան չեն արդարանար, և զորս գէթ հարևանցի ակնարկել կարևոր պարտք են անվեհեր պատմագրի, հասնելու համար գէթ պատմութեան ճշմարիտ մարմնոյն, կեղևելով վկայաբանական ստեղծումներ, որ արտաքոյ են պատմական հաւանականութեան անգամ, թող թէ ստուգութեան։

Նախ կ'ըսենք, թէ Աբգարու դարձին պատմութիւնն, զոր կը բերէ Խորենացին արդարև ասորի աղբերէ (Ղերուբնա)՝ է պատմութիւն դարձի Ադիաբենի թագաւորին Իզատայ որդւոյ Մանովազայ։ Մանովազ և Իզատ փոխուած են ի Մանովէ և յԱբգար, սակայն պատմութեան պարագաներն են մեծաւ մասամբ նոյն, սա տարբերութեամբ միայն՝ որ Ադիաբենի թագաւորին դարձն է ի հրէութիւն, մինչև Աբգարուն է ի քրիստոնէութիւն։ Այս նոյնութիւն չկրնար համարուիլ արգասիք դիպաց, և ոչ Ադիաբենի պատմութիւնն պատուաստ ի մերոյն, քանզի այն դարձն յառաջագոյն է քան զմերն։ Ահա պատմութիւնն ըստ էական մասանց, յորս է նոյնութիւնն։ Ադիաբենի թագաւորն Մանովազ ունէր որդի Իզատ, որոյ մայրն էր Հեղինէ։ Հրեայ ումն Անանիա անուն կը քարոզէ Հեղինէի և որդւոյն հրէութիւն. Իզատ և մայր նորա կը դառնան։

Յետ ժամանակաց Հեղինէ կ'երթայ յԵրուսաղէմ, մինչ սով մեծ կը տիրէր ի քաղաքին։ Հեղինէ բերել կու տայ ցորեան բազում յԱղեքսանդրիայ և պաղատիտս թզոյ Կիպրոսէ՝ բաշխել սովելոց։ Հեղինէ կը թաղուի ի շիրմին՝ զոր ինքն շինել տուած էր մօտ յԵրուսաղէմ։ Ի պատմութեան Աբգարու ևս կայ Անանիա (Անանէ), որ կը բերէ Քրիստոսի թուղթը և կենդանագիրն առ Աբգար, որ կը հաւատայ և կը դառնայ ի քրիստոնէութիւն. կայ և Հեղինէ Աբգարու կին, որ կ'երթայ յԵրուսաղէմ ի սովին, կը գնէ ցորեան բազում յոյժ և կը բաշխէ կարօտելոց, և որոյ շիրիմ ևս կայ նշանաւոր առաջի դրան Երուսաղեմի, ասէ Խորենացին, մինչև ցայսօր։

Այսչափ մերձաւորութիւն որ կայ ի մէջ երկուց պատմութեանց՝ բաւական է տալ մեզ ասել, թէ մին, և անտարակոյս մերն, է նմանութիւն միւսոյն։ Թող նմանութեան յիշեալ կէտերն՝ ոչ սակաւ մերձաւորութեան նշան է և այն, զոր Յովսեպոս և Խորենացին կը պատմեն յաջորդութեան կռուին համար, որ հաւանական է թէ դիպեցաւ ի մէջ Պարթևաց, և զոր, ըստ Յովսեպոսի՝ խաղաղացոյց Իզատ, և ըստ Խորենացւոյն՝ Աբգար։ Ըստ Յովսեպոսի՝ Արտաւան Գ. Պահլաւ, արքայ Պարթևաց (14) մերժուելով յիւրոցն՝ կ'ապաւինի առ Իզատ, որ յորդորելով զգլխաւորս Պարթևաց, մանաւանդ զԱֆւննակ երևելի իշխան Պարթև՝ կը խաղաղէ զերկիրն, և Արտաւան կը հաստատուի ի թագաւորութեան (Յովս. Նախն. պատմ. Ի. 2)։ Այս պատմութիւն Յովսեպոսի կ'ակնարկէ այն խռովութիւններն, որ եղան ի Պարթևս (16—40) և զորս փոքր ի շատէ կը յիշեն Տակիտոս, Յովսեպոս, Դիոն։ Նայելով յազգականութիւն կամ ի մերձաւորութիւն Ադիաբենի թագաւորաց ընդ Պարթևաց (Րընան, Առաքեալք)՝ միջնորդութիւն ինչ եղած գնել յԻզատայ չէ անհաւանական։ Խորենացին տալով զայս մերձաւորութիւն ասորւոյն կամ արաբացւոյն Աբգարու՝ կու տայ նմա երթալ—և հարկ էր ընել զայս յետ շփոթելոյ զԱբգար ընդ Իզատայ — անձամբ ի Պարթևս, և ոչ խաղաղել միայն յաջորդութեան վէճն, որ ծագած էր ի մէջ Արտաշիսի (իմա Արտաւանայ Գ.) և եղբարց նորա, այլ հաստատել ևս օրէնս յաջորդութեան, այսինքն թէ թագաւորէր Արտաշիսի ցեղն իբրև բուն Պահլաւ, որդւոց յորդիս, և ի սպառել այն ցեղին՝ տիրէին տոհմք միւս եղբարց, որ էին Կարէն, Սուրէն և քոյր նոցա Կոշմ, կին սպարապետին Արեաց՝ իբրև Կարենի, Սուրենի և Ասպահապետի Պահլաւք։ Խորենացին, ինչպէս այլուր նոյնպէս հոս, փոխելով Պարթև թագաւորին Արտաւանայ անունն յԱրտաշէս և ընելով զնա որդի Արտաշրի, որ չունի հաստատութիւն՝ կու տայ նմա այն երկու եղբայրներն, Կարէն, Սուրէն և քոյր մի ևս, մինչ ար-

տաքին ժամանակակից պատմութիւնն (Տակիտ., Յովս., Դիոն) գիտեն Արտաւան և ոչ Արտաշէս, և կու տան նմա արդարև երկու եղբայր, բայց ոչ Կարէն և Սուրէն, այլ Վարդան և Գոտարզ։ Գիտենք ևս, թէ հակառակ կարծեցեալ օրինացն Աբգարու, որպէս կամի Խորենացին՝ Արտաւան կ'սպանուի (41), և կը թագաւորեն եղբարք նորա Վարդան և Գոտարզ (իբրև Արշակ Ի. և ԻԱ,—50) մինչև ի Վաղարշ Ա. (Արշակ ԻԳ, 51—91) նոյն Պահլաւ ցեղէն, առ որով հաստատուեցան իրք ոչ Պարթևաց միայն, այլև Հայոց։ (Տես և Գաթըրճեան, Տիեզ. պատմ. Հա. Բ. 99—107)։

Խորենացին ի գնելն Պարթևաց այն ազգաբանութիւնն, առնլով չենք գիտեր ինչ աղբերէ՝ ունէր նպատակ, որպէս թուի, ցուցնել, թէ ինչպէս նախախնամութիւնն գիտաց շնորհել Հայոց Լուսաւորիչ «ի Պարթևական մեղապարտ ազգէն». քանզի կը յաւելու, բայց կասկածելով—«Այսմ զսուրբն Գրիգոր ի Սուրէնեանն Պահլաւէ», անտարակոյս ըստ վկայաբանութեան իմիք։

Աղխաբենի արքունեաց դարձն ի հրէութիւն չէ ամենևին անհաւանական։ Յառաջնում դարու անդ նախ քան զՔրիստոս, մանաւանդ յարևելս, այնպէս ընդելեալ էին միտք մարդկան դէպ ի միաստուածութիւն՝ որ ոչ հասարակ մարդիկ միայն, այլև երևելի ընտանիք կ'ընդունէին զկրօնս Հրէից, բաց ի թլփատութենէ և ի խորութենէ կերակրոց։ Սկզբունք Պօղոսի արդէն սկսած էին յառաջ քան զՊօղոս։ (Զայսմանէ տես Րենան, Առաջին դարք քրիստոնէութեան, Առաքեալք, Գլ. ԺԳ.)։

Գալով դարձեալ ի պատմութիւն Աբգարու դարձին ի քրիստոնէութիւն՝ չէ նոյնպէս անհաւանական, թէ արդէն իսկ ի սկզբան առաջին դարուն տարածեցաւ քարոզութիւն Աւետարանին յԱսորիս և ի Միջագետս, ուստի և անշուշտ յՈւռհայ, մինչև Աբգարու անգամ մտել ի քրիստոնէութիւն։ Սակայն կան պարագաներ ի պատմութեան դարձին Աբգարու՝ որ են վկայաբանական կեղծիք, զորօրինակ թէ հրեշտակք, զորս ղրկեց Աբգար առ Մարինոս կուսակալ կայսեր ի Պաղեստին և ի Փիւնիկէ՝ ի դարձին ելին յԵրուսաղէմ առ Քրիստոս, և տեսնելով զսքանչելիս նորա՝ եկան պատմեցին Աբգարու, որ հաւատաց ի նա «ճշմարտապէս իբրև յարդարև որդի Աստուծոյ, և ասէ. Այն զօրութիւնք ոչ մարդոյ են այլ Աստուծոյ, զի չիք ոք ի մարդկանէ որ կարէ զմեռեալս յարուցանել, բայց միայն Աստուած»։ Արդարև բանք քրիստոնէի եղեալք ի բերան Աբգարու։ Բայց քան զայս աւելի նուազ հաւանական է հրաւիրել նորա թղթով զՔրկիչն գալ բժշկել զնա. ա. հ։ Ահա պատճէն թըղթոյն առ Խորենացւոյն. «Աբգար Արշամայ, իշխան աշխարհի. առ

Յիսուս փրկիչ և բարերար, որ երևեցար աշխարհին Երուսաղեմացւոց, ողջոյն։ Լուեալ է իմ վասն քո և վասն բժշկութեանդ որ լինին ի ձեռս քո առանց դեղոց և արմատոց. զի որպէս ասի՝ տաս դու կուրաց տեսանել և կաղաց գնալ, և զբորոտս սրբես, և զայսս պիղծս հանես, և որ միանգամ չարչարեալ են երկար հիւանդութեամբք՝ բժշկես. դու և զմեռեալս յարուցանես։ Եւ իբրև լուայ վասն քո զայս ամենայն՝ եդի ի մտի իմում մի յերկուց աստի. կամ թէ դու Աստուած իցես, իջեալ յերկնից գործես զայդ, կամ թէ որդի իցես դու Աստուծոյ, և զայդ առնես։ Արդ վասն այնորիկ գրեցի ես առ քեզ՝ աղաչել զքեզ, զի աշխատ լինիցիս և եկեսցես առ իս և բժշկեսցես զհիւանդութիւնս զոր ունիմ ես։ Նա և լուայ, զի Հրեայք տրտնջեն զքէն և կամին չարչարել զքեզ. բայց քաղաք մի փոքրիկ և գեղեցիկ է իմ, և բաւական է մեզ երկոցունցս»։ Թուղթը տանողներն որպէս թէ կը տեսնեն զՅիսուս յԵրուսաղէմ։ Նայելով Յովհաննու Աւետարանին գլ. ԺԲ. 20—23, ուր ըսուած է թէ հեթանոսք ոմանք եկած էին այն տօնին յԵրուսաղէմ և կամէին տեսնել զՅիսուս՝ աղբիւր Խորենացւոյն այս հեթանոսներով կ'իմանայ Աբգարու դեսպաններն, որք որպէս թէ չհամարձակելով մօտենալ Յիսուսի՝ ըսին Փիլիպպոսի և Անդրէի, և նոքա՝ Յիսուսի։ «Իսկ ինքն Փրկիչն—կը յաւելու պատմութիւն Խորենացւոյն—յայնմ ժամանակի յորում կոչեացն զնա՝ ոչ առ յանձն, (թերևս կամի ասել, թէ ունէր ի մտի երթալ յետոյ), բայց թղթոյ արժանի արար զնա»։ Զիք տարակոյս, թէ ճարտարութեամբ յարմարցուած է Աւետարանին այն պատմութիւնն Աբգարու հրեշտակաց. բայց բանք Յովհաննու են այն հեթանոսաց, այսինքն Յունաց համար, որ մտեալ ի հրէութիւն՝ Զատկի տօնին կու գային յայցելութիւն տաճարին («յելելոցն անդր՝ զի երկիր պագանիցեն ի տօնին»); որ, ինչպէս կ'ըսէ Րընան (Առաքեալք էջ 253)՝ «էր մին ի նուիրական տեղեաց աշխարհի, որոյ համբաւն տարածեալ էր ի հեռաստան, և ուր լինէին նուէրք յաճախագոյն քան այլուր. հրէական կրօնք էին տիրող մեծի մասին երկրին Ասորւոց»։ Զիարդ և իցէ՝ այս հրեշտակութիւն կամ այցելութիւն առ Փրկիչն թող համարուի հաւանական. բայց բոլորովին զուրկ է հաւանականութենէ Քրիստոսի թուղթն, զոր Խորենացին կը դնէ գրեալ ի Թովմայ իբրև պատասխանի, ուր որպէս թէ կ'ըսէ Փրկիչն. «Երանի իցէ այնմ որ հաւատայ յիս՝ իբրև ոչ իցէ նորա տեսեալ զիս. զի գրեալ է վասն իմ այսպէս. Զի որք տեսանենն զիս՝ ոչ հաւատասցեն յիս, և որք ոչն տեսանեն՝ նոքա հաւատասցեն և կեցցեն։ Իսկ վասն այնր զի գրեցեր դու առ իս, գալ ինձ առ քեզ՝ արժան է ինձ կատարել աստ զամենայն ինչ վասն

որոյ առաքեցայ ես։ Եւ յորժամ կատարեցից զայս՝ ապա համբարձայց առ այն որ առաքեացն զիս. և յորժամ համբարձայց՝ առաքեցից զմի յաշակերտաց աստի իմոց, զի զցաւս քո բժշկեսցէ և կեանս քեզ և որոց ընդ քեզ են շնորհեսցէ»։ Զարմանալի է որ ամենազօր Փրկիչն յետ համբարձման իւրոյ կը թողու Աբգարու բժշկութիւնը, մինչ կարող էր իսկ և իսկ ի հեռուստ անգամ բժշկել զնա բանիւ։ Բայց ինչպէս պիտի հասկցուէր պատմութեան անտեղութիւնը։ «Զայս թուղթ — կը յաւելու Խորենացին — երեր Անան սուրհանդակ Աբգարու, ընդ որում և զկենդանագրութիւն Փրկչական պատկերին, որ կայ յԵդեսացւոց քաղաքին մինչև ցայսօր ժամանակի»։

Թող որ երկու նամակներուն ևս պարագաներն, որովք նամակագիրն կը կարծէ վաւերական ընել զնոսա, չեն ամենևին բնական՝ երկու բան մանաւանդ, այսինքն, մի՝ կոչելն Աբգարու զՅիսուս՝ Փրկիչ, որ վաղահաս էր տկար հաւատացելոյն Աբգարու համար, և երկրորդ՝ թէ ո՛չ տեսողք, այլ չտեսողք պիտի հաւատային ի նա, (բանք որ կ'ակնարկեն Յովհաննու Ի. 29 համարն, — «Երանի որոց ոչ իցէ տեսեալ և հաւատասցեն»)՝ — կը ցուցնեն յայտնապէս, թէ նամակներն գրուած են յետ խմբագրութեան չորրորդ Աւետարանին, իմա այնպիսի ժամանակ, երբ Նոր Կտակարանին կանոնն առած էր զիւր վերջին ամբողջութիւն, և հաւատալիք Քրիստոսի անձին և պաշտաման վրայ՝ որոշուած և ծանուցուած էին, այսինքն թէ Յիսուս էր փրկիչ աշխարհի, առաքեալ յԱստուծոյ. մանաւանդ թէ Աստուած իսկ։ Ըսինք՝ տկար հաւատացելոյն Աբգարու։ Ո՞չ ապաքէն հրաւիրել նորա զՓրկիչն գալ բնակել ընդ իւր կը ցուցնէ, թէ անտեղեակ էր նա տնօրէնութեանց Փրկչին, որ կատարելոց էին յԵրուսաղէմ, և չունէր տակաւին զնմանէ զպատշաճ կարծիս։

Այս թուղթք Աբգարու, զորս կը բերէ Խորենացին՝ առնուած են, ինչպէս կ'ընդունի նաև Գաթըրճեան, Եւսեբեայ Եկեղեցական պատմութեան հայերէն թարգմանութենէն, և որոց աղբիւրք, ինչպէս նաև բովանդակ պատմութեան՝ են յետին ասորական մատեանք դիւանին Եդեսիայ։ Եւսեբիոս անգէտ է միայն պատկերին պատմութեան, զոր կը թուի թէ չգտաւ այն դիւանին մէջ, ուստի և այս առասպելն հնարուած է յետոյ քան նամակներուն։

Ըստ ԼԳ. գլխոյ պատմութեան Բ. գրոց Խորենացւոյն՝ յետ համբարձման Փրկչին Թովմաս առաքեալ կը ղրկէ զԹադէոս մին յեօթանասնից առ Աբգար։ Բովանդակ գլխոյն նիւթն է վիպասանական (légendaire), լի նորանշան դիպօք, ստորին և հետեւակ, առանց ամենևին պատմական հիման։ «Յետ համբառնալոյ Փրկչին մերոյ, կ'ըսէ, Թովմաս առաքեալ, մի յերկոտասանիցն, առաքեաց

Նմի յեօթանասնից անտի զԹադէոս ի քաղաքն Եդեսիա բժշկել զԱբգար և աւետարանել ըստ բանին Տեառն։ Որոյ եկեալ ի տուն Տուբիայ իշխանի Հրէի, զոր ասեն լինել յազգէն Բագրատունեաց, որոյ խուսեալ յԱրշամայ ոչ ուրացաւ զՀրէութիւնն ընդ այլ ազգականս իւր, այլ նոյն օրինօքն եկաց մինչև հաւատալ ի Քրիստոս։ Եւ եղ համբաւ նորա (Թադէի) ընդ ամենայն քաղաքն։ Լուեալ Աբգարու՝ ասէ. Նա է վասն որոյ գրեացն Յիսուս. և իսկոյն կոչեաց զնա։ Եւ եղև ի մտանելն Թադէի՝ տեսիլ մեծ երևեցաւ Աբգարու յերեսսն Թադէի. և յարուցեալ ի գահոյից անկաւ ի վերայ երեսաց իւրոց և երկիր եպագ նմա, և զարմացան ամենայն իշխանքըն որ շուրջն կային, զի ոչ գիտացին զտեսիլն։ Ասէ ցնա Աբգար, եթէ Դո՞ւ իցես արդարև աշակերտ օրհնելոյն Յիսուսի, զոր ասաց առաքել ինձ այսր, և կարո՞ղ իցես բժշկել զցաւս իմ։ Պատասխանի ետ Թադէ. Եթէ հաւատասցես ի Քրիստոս Յիսուս յորդին Աստուծոյ՝ տացին խնդրուածք սրտի քո։ Ասէ ցնա Աբգար. Ես հաւատացի ի Նա և ի Հայրն Նորա. վասն որոյ կամեցայ առնուլ զզօրս իմ և գալ կոտորել զՀրեայսն որ խաչեցին զնա, եթէ ոչ էր արգելեալ վասն թագաւորութեանն Հռոմայեցւոց։ Եւ յայսմ բանէ սկիզբն առեալ Թադէի՝ աւետարանեաց նմա և քաղաքի նորա. և եդեալ ձեռն ի վերայ՝ բժշկեաց զնա և զԱբդիու պատրագրոս իշխան քաղաքին և պատուական յամենայն տանն արքայի. նաև զամենայն որ էին ի քաղաքին հիւանդք և ախտաժէտք՝ բժշկեաց։ Եւ հաւատացին ամենեքեան. և մկրտեցաւ ինքն Աբգար և ամենայն քաղաքն. և զդրունս տաճարաց կռոցն փակեցին, և որ ի վերայ բագնին և սեանն կային պատկերքն՝ ծածկեալ պատեցին եղեգամբ։ Եւ ոչ զոք ածէր բռնութեամբ ի հաւատս, բայց օր ըստ օրէ յաւելեալ ի հաւատացեալսն բազմանային։ Իսկ առաքելոյն Թադէի զխոյրարար ոմն մետաքսագործ մկրտեալ և անուն կոչեցեալ Ադդէ, ձեռնադրեալ ի վերայ Եդեսիայ՝ փոխանակ իւր թողու առ արքայի։ Եւ իւր առեալ հրովարտակ յԱբգարէ, զի ամենեքեան լուիցեն Աւետարանին Քրիստոսի՝ գայ առ Սանատրուկ քեռորդի նորին, զոր կարգեալ էր ի վերայ աշխարհին և զօրացն։ Բայց Աբգար յօժարեցաւ գրել թուղթ առ Տիբերիոս կայսր, որ ունի օրինակ զայս.

«Աբգար արքայ Հայոց. տեառն իմում Տիբերի կայսեր Հռոմայեցւոց խնդալ։ Գիտելով իմ թէ ոչինչ ծածկի ի քումմէ թագաւորութենէ, այլ իբրև զմտերիմ քո աւելի ևս իմացուցանեմ ի ձեռն գրոյ։ Զի Հրեայք որ բնակեալ են ի գաւառս Պաղեստինացւոց, ժողովեալ խաչեցին զՔրիստոս առանց իրիք յանցանաց, ի վերայ մեծամեծ երախտեացն զոր արար առ նոսա, նշանս և սքանչելիս,

*մինչև զմեռեալս անգամ յարուցանել։ Եւ գիտեա զի զօրութիւնքս այս ոչ են սոսկ մարդոյ, այլ Աստուծոյ։ Զի և ի ժամանակին յորում խաչեցին զնա՝ արեգակն խաւարեցաւ, և երկիր շարժեալ տատանեցաւ, և ինքն յետ երից աւուրց յարեաւ ի մեռելոց և երևեցաւ բազմաց։ Եւ այժմ յամենայն տեղիս անուն նորա ի ձեռն աշակերտաց նորա սքանչելիս մեծամեծս կատարէ, որ և առ իս ինքեան եցոյց յայտնապէս։ Եւ այդ այսուհետև տէրութիւնդ քո գիտէ, որ ինչ արժան է հրամայել ի վերայ ժողովրդեանն Հրէից որք զայն գործեցին, և գրել ընդ ամենայն տիեզերս՝ զի երկրպագեսցեն Քրիստոսի իբրև ճշմարիտ Աստուծոյ։ Ողջ լեր»։*

*Աբգար կ'ընդունի պատասխան Տիբերէ.*

*Տիբերիոս կայսր Հռոմայեցւոց. Աբգարու Թագաւորի Հայոց խնդալ։ Զթուղթ մտերմութեանդ քո ընթերցան առաջի իմ. վասնորոյ շնորհակալութիւն ի մէնջ քեզ հասցէ։ Թէպէտև ի բազմաց մեր լուեալ զայս յառաջագոյն՝ եցոյց և Պիղատոս ստուգապէս վասն նշանացն նորա, և եթէ յետ յարութեանն ի մեռելոց հաւատարիմ եղև բազմաց թէ Աստուած է։ Վասն որոյ և ես կամեցայ առնել զայդ զոր և դու խորհեցար։ Այլ քանզի սովորութիւն է Հռոմայեցւոց աստուած ի հրամանէ թագաւորի միայնոյ ոչ նստուցանել, մինչև ոչ փորձեալ քննեսցի նա ի սինկղիտոսէն՝ վասնորոյ և իմ յայտնեալ զբանս զայս սինկղիտոսին՝ արհամարհեաց սինկղիտոսն, զի ոչ քննեցաւ նա յառաջագոյն ի նմանէ։ Այլ մեք տուաք հրաման ամենայն ումեք որում և հաճոյ թուեսցի Յիսուս՝ ընկալցին զնա ընդ Աստուածս, և մահ սպառնացեալ՝ որ չարախօս կայցեն ըզքրիստոնէից։ Եւ վասն ժողովրդեանն Հրէից որ յանդգնեցան խաչել զնա, զորմէ լսեմ թէ ոչ արժանի խաչի էր նա և մահու, այլ պատուի և երկրպագութեան, յորժամ առից պարապումն ի պատերազմէս Սպանիացւոց ապստամբողաց յինէն՝ քննեալ հատուցից նոցա զարժանն»։*

*Աբգար կը գրէ երկրորդ անգամ թուղթ առ Տիբեր.*

*«Աբգար արքայ Հայոց. տեառն իմում Տիբերի կայսեր Հռոմայեցւոց խնդալ։ Զթուղթն գրեալ ըստ արժանի քոյոյ տէրութեանդ՝ տեսի, և ընդ հրաման մտածութեանդ քո ուրախացայ. և եթէ ոչ ցասնուցուս ինձ՝ գործ սինկղիտոսիդ յոյժ ալպանելի է. քանզի առ դոսա՝ ի քննութենէ մարդկան տուեալ լինի աստուածութիւնն։ Եւ արդ այսուհետև եթէ ոչ լինիցի հաճոյ Աստուածն մարդոյն՝ Աստուած լինել նա ոչ կարէ. և իբրև յայսմանէ մարդոյն արժան է քաւել զԱստուածն։ Բայց քեզ տեառն իմոյ հաճոյ թուեսցի առաքել զայլ ոք յԵրուսաղէմ փոխանակ Պիղատոսի, զի լուծցի նա ա-*

նարգանօք յիշխանութենէն յոր կարգեցեր զնա, վասն զի արար զկամս Հրէիցն և խաչեաց զՔրիստոս ի տարապարտուց առանց քոյոյ հրամանի։ Ողջ լինել քեզ ըղձամ»։

«Զայս գրեալ Աբգարու՝—յաւելու Խորենացին—զհաւատար թըղթոյն եդ ի դիւանի իւրում որպէս և զայլսն։ Գրեաց և առ Ներսեհ մանուկ արքայ Ասորեստանի ի Բաբելոն.

«Աբգար արքայ Հայոց. որդւոյ իմում Ներսեհի խնդալ։ Զգիր ողջունի քո տեսի, և զՊերոզ լուծի ի կապանաց, և զվնաս նորա թողի նմա. և եթէ կամ իցէ քեզ՝ կարգեսցես զնա ի վերակացութիւն Նինուէի, որպէս և կամիս։ Այլ վասն այնր զի գրեցեր առ իս, թէ տուր աձել զայրդ բժիշկ որ զնշանսդ առնէ և քարոզէ այլ Աստուած ի վեր քան զհուր և զջուր, զի տեսից և լուայց դմա՝ նա ոչ էր բժիշկ ըստ արուեստի մարդկան, այլ աշակերտ էր Որդւոյն Աստուծոյ արարչի հրոյ և ջրոյ, և վիճակ հասեալ ի կողմանս Հայոց առաքեցաւ։ Բայց յընկերաց նորա գլխաւորաց Սիմովն անուն, նա ի կողմանս Պարսից առաքեալ է. խնդիր արարեալ լուիցես նմա, յորժամ և հայրն քո Արտաշէս։ Եւ նա բժշկեսցէ զամենայն հիւանդութիւնս և ճանապարհ կենաց ցուցցէ»։

«Եւ յաւել ես գրել, կ՚ըսէ Խորենացին, առ Արտաշէս արքայ Պարսից օրինակ զայս.

«Աբգար արքայ Հայոց. Արտաշիսի եղբօր իմում Պարսից արքայի խնդալ։ Գիտեմ զի արդ լուեալ է քո վասն Յիսուսի Քրիստոսի Որդւոյն Աստուծոյ զոր խաչեցին Հրեայքն, որ յարեաւն ի մեռելոց, և առաքեաց զաշակերտսն իւր ընդ ամենայն տիեզերս՝ ուսուցանել ընդհանուր։ Եւ մի յաշակերտաց նորա գլխաւորաց Սիմովն անուն՝ է ի կողմանս քոյոյ տէրութեանդ։ Արդ խնդիր արարեալ գտցես զնա, և նա բժշկեսցէ զամենայն ախտս հիւանդութեանց որ ի ձեզ և ճանապարհ կենաց ցուցցէ. և հաւատասցես բանի նորա, դու և եղբարք քո և ամենեքեան որ հնազանդին քեզ կամաւոր։ Զի ախորժելի է ինձ զձեզ ըստ մարմնոյ ազգականս՝ լինել ինձ մտերիմ հարազատս և ըստ հոգւոյ»։

«Եւ մինչդեռ պատասխանի այսց թղթոց ոչ էր ընկալեալ՝ վախճանի Աբգարիոս, թագաւորեալ ամս երեսուն և ութ»։

Ինչ որ ըսինք առաջին երկու նամակներուն համար՝ կրնանք ըսել նաև այս վերջիններուն համար, թէ են յետին գործ, և ոչ Աբգարու անձին և ժամանակին։ Ոչ այլ ինչ կը գտնենք նամակներուն մէջ առ Տիբեր և առ այլս՝ եթէ ոչ, ինչպէս տեսանք՝ կատարեալ հանգանակ հաւատոյ ըստ Աւետարանաց, զոր կը թուի ի ձեռին ունել հեղինակ նամակներուն։ Գ. և Դ. դարերուն քրիստոնէէ և ոչ

Քրիստոսի յարութենէն 2 կամ 3 տարի յետոյ դարձող Աբգարէ կըրնայ սպասուիլ այնպիսի կատարեալ գաւանութիւն, որ գրեթէ բառ առ բառ առնուած է Աւետարաններէն, զոր օրինակ թէ տայր նա կուրաց տեսանել, կաղաց գնալ, սրբէր զբորոտս, զայսս պղծս հանէր, բժշկէր զորս միանգամ տանջէին երկար հիւանդութեամբք, յարուցանէր զմեռեալս. թէ Հրեայք տրտնջէին զնմանէ և կամէին սպանանել զնա. թէ կատարելոց էր յԵրուսաղէմ՝ ինչ բանի համար որ եկած էր, և ապա համբառնալոց առ այն որ առաքեացն զնա. թէ ի ժամանակին՝ յորում խաչեցին զնա՝ արեգակն խաւարեցաւ, երկիր շարժեալ տատանեցաւ. թէ յետ երից աւուրց յարեաւ ի մեռելոց և երևեցաւ բազմաց, ա. հ:

Առանձին դիտողութեան արժանի են սա կէտերն, որ ոչ կը նուազեցունեն միայն, այլ և կը քառնան նամակներուն պատմական և ժամանակագրական յարգը. նախ՝ արքայ Հայոց անունն, տրուած Աբգարու ի թղթին նորա առ Տիբեր և Տիբերին առ նա՝ չէ պատմական: Տիբեր չէր կրնար կոչել զԱբգար «արքայ Հայոց» ի ժամանակին՝ երբ Արտաշէս (Զենոն, 18), և Միհրդատ Վիր (35) կը տրուէին հետ զհետէ (տես մասն Բ. գլ. ԺԱ.) թագաւոր Հայոց ի նմին իսկ Տիբերէ, մինչ Աբգար էր «իշխան աշխարհի», տեղապետ (τόπαρχος) Ուռհայաստանի ընդ ազդեցութեամբ Հերովդի, չունենալով մասն Հայոց հետ:

Չէ ամենևին հաւանական, թէ Պիղատոս, ինչպէս նամակը կու տայ ըսել Տիբերի՝ գրած էր «ստուգապէս» առ նա վասն նշանացն Քրիստոսի, և թէ յետ յարութեան «հաւատարիմ եղև բազմաց թէ Աստուած էր». չէ հաւանական նոյնպէս ասելն Տիբերի, թէ «յորժամ առից պարապումն ի պատերազմէս Սպանիացւոց տպատամբողաց լինէն՝ քննեալ հատուցից նոցա (Հրէից) զարժանն».—Տիբեր չունեցաւ ամենևին պատերազմ Սպանիացւոց հետ:

Ասելն Աբգարու առ Տիբեր, թէ «այժմ յամենայն տեղիս անուն նորա ի ձեռն աշակերտաց նորա սքանչելիս մեծամեծս կատարէ», և առ Արտաշէս, թէ «առաքեաց զաշակերտս իւր ընդ ամենայն տիեզերս ուսուցանել ընդհանուր»՝ կը ցուցնէ թէ գրողը չկարէր լինել Աբգար, այլ այլ ոք բազում ամօք յետոյ քան զնա. քանզի աշակերտաց ցրուելն ընդ ամենայն տիեզերս, որ ակնարկէ Մատթէոսի ԻԸ. 19 համարը—«Գնացէք, աշակերտեցէք զամենայն հեթանոսս»—չեղաւ իսկ և իսկ առաջին 2 կամ 3 տարիներուն մէջ, մինչև գիտել և վկայել Աբգարու, թէ «սքանչելիք մեծամեծք կատարէին ի ձեռն աշակերտաց նորա ընդ ամենայն տիեզերս»: Դարձեալ, թէ մին ի գլխաւոր աշակերտաց Սիմոն ղրկուած էր ի կող-

մանս Պարսից (Բաբելոն)՝ կ՚ակնարկէ Պետրոսի ընծայուած Ա. Թուղթըն, Ե. 13, ուր կը յիշուի Բաբելոն իբրև վիճակ Սիմոնի, այն է Պետրոսի, ըստ մեկնութեան նախնի հարց ոմանց։ Ապաքէն դըժուարին, նա անհնարին իսկ էր Աբգարու գիտել եկեղեցական պատմութեան այս նուրբ խնդիրներն և հիմնել ի նոսա իւր Թուղթերն։

Նաև գրելն Աբգարու Թուղթ առ Ներսեհ ոմն մանուկ արքայ Ասորեստանի ի Բաբելոն, որդի Արտաշիսի արքայի Պարսից՝ չունի ամենևին հաստատութիւն, քանզի ո՛չ Ներսեհ կայ, ո՛չ Արտաշէս Պարսից թագաւոր, և ոչ Բաբելոն յԱսորեստանի այն ժամանակին պատմութեան մէջ։ Տիւլորիէ ևս զարմանալի կը գտնէ Բաբելոն յԱսորեստանի։ Խորենացին կ՚ըսէ, թէ Աբգար յառաջ քան զընդունելն պատասխանի իւր Թուղթերուն առ Ներսեհ և առ Արտաշէս՝ մեռաւ։ Ապա Թուղթերը գրուեցան 37-ին մօտ, որ է Աբգարու մահուան տարին. արդ այն Թուականին և վաղ իսկ, մինչև 41 կը տիրէին Վարդան և Գոտարզ (Արշակ Ի. և ԻԱ.) եղբարք. ո՞վ էին ուրեմն այն Ներսեհ և Արտաշէս հայր նորա։

Աբգարու դարձին և Թղթակցութեան վրայ մեր քննութիւնը կը բովանդակենք ըսելով, թէ աղբիւրն, ուստի առնու Խորենացին— քանզի չէ իրաւացի ըսել թէ Խորենացին կ՚ստեղծու անձամբ—էր գործ ասորւոյ ուրուք դպրոցին Եդեսիայ, իբրև Ա. դարու ծնունդ, թէպէտ չէր հին քան զԳ. և զԴ. դար յետ Քրիստոսի, գործ՝ որոյ նմաններն բազում էին ի դիւանին Եդեսիայ, և որ, եթէ կ՚ընծայուին ժամանակին յառաջ քան զՔրիստոս, կամ իբր ժամանակակից նմա՝ կը կրեն յայտնապէս տւասպելական դրոշմ։ ·(Տես Րընան. Պատմ. Սեմ լեզ. Գիրք Գ. Գլ. Գ.)։

Արդարև ոմանք յարդի քննչաց, ինչպէս Տիլլմոն գաղղիացի, Բաւէ անգղիացի և Վէլտէ գերմանացի, ըստ Գաթըրճեանի, արդարացուցին իւիք իւիք զԹուղթն Քրիստոսի առ Աբգար (թէպէտ այլք առ հասարակ կը մերժեն), զբան Թղթոյն «երանի իցէ այնմ որ հաւատայ յիս իբրև ոչ իցէ տեսեալ զիս», և «գրեալ է վասն իմ, զի որք տեսանենն զիս՝ ոչ հաւատասցեն յիս, և որք ոչն տեսանեն՝ նոքա հաւատասցեն և կեցցեն»՝ հանելով ոչ ի բանն Յովհաննու Ի. 29, այլ ի բանն Եսայեայ ԾԲ. 16 —«Որոց ոչ պատմեցաւ վասն նորա՝ տեսցեն, և որոց չիցէ լուեալ՝ ի միտ առցեն, և ԿԵ. 1. «Յայտնի եղէ այնոցիկ որ զինէն ոչ հարցանէին, գտայ այնոցիկ որ զիսն ոչ խնդրէին»։ Յայտնի է սակայն, թէ բունի է մերձեցումն, և բանք Թղթոյն կը նային ի բանն Յովհաննու։ Իսկ պատկերին պատմութեան համար սաչափ միայն ասէ Գաթըրճեան, թէ

ոչ Եւագր, այլ յառաջ քան զնա Խորենացին կը յիշէ զայն պատմութիւն։

Գաթըրճեան կը թուի արդարացունել մանաւանդ Տիբերի թուղթըն առ Աբգար, ուր ըսուած է թէ ծերակոյտն մերժեց զառաջարկութիւն Տիբերի՝ կարգել զՔրիստոս յԱստուածս։ Առ այս կը թուի յենուլ Գաթըրճեան ի վկայութիւնն Տերտուղիանոսի (Պատասխանատու. Ե.) թէ «Տիբերիոս յորոյ ժամանակին իսկ եմուտ յաշխարհ քրիստոնէութիւն, յորժամ պատմեցաւ նմա յԱսորւոց Պաղեստինացւոց որ ինչ ի յայտնութիւն ճշմարտութեան աստուածեղէն մարդոյն էր՝ հան նա զամենայն յանդիման ծերակուտին յաւելուածով առաւելութեան վճռոյն իւրոյ։ Այլ ծերակոյտն, քանզի չէր ինքնին քննեալ՝ մերժեաց։ Իսկ կայսր եկաց յառաջնում խորհրդեան իւրում, սպառնացեալ պատուհաս որոց ամբաստանեն կայցեն զքրիստոնէից»։ Բայց խնդիր այն չէ, թէ զՅիսուսէ իբրև զՄեսիայէ տեղեկութիւն տրուեցաւ Տիբերի յԱսորւոց ոմանց Պաղեստինացւոց (թէպէտ այս ևս չթուիր հաւանական). և Տիբեր առաջարկեց ծերակուտին աստուածացունել զՅիսուս, և չեղաւ ընդունելի, այլ թէ Տիբերի առաջարկութիւնն եղաւ ի թելադրութենէ թղթոյն Աբգարու։ Սակայն դիտողութեան արժանի է, որ հարկ չկար ամենևին Տիբերի արգելուլ ամբաստանել զքրիստոնեայս, քանզի քրիստոնէից դէմ հալածմունք դեռ սկսած չէին առ Տիբերիւ (14—37), մինչ տակաւին ի խանձարուրս էր քրիստոնէութիւն, նա գրեթէ անծանօթ իսկ։

Խորենացւոյն Բ. դպրութեան ԼԴ. գլուխն է վկայաբանական։ Յետ ասելոյ, թէ «յետ մահուանն Աբգարու բաժանի թագաւորութիւնն Հայոց յերկուս. քանզի Անանուն որդի նորա կալեալ թագաւորել յԵդեսիա, և քեռորդի նորա Սանատրուկ ի Հայս»՝ կը խօսի զնահատակութենէն Թադէոսի և Բարթողիմէոսի, իբրև առաքելոց Հայոց։ «Ի սկզբանէ իբրև ամոլ և առաքեալ համարեալ է ընդ Թադէոսի՝ և Բարթողիմէոս, բայց անստոյգ իմն է պատմութիւնն» (Գաթըրճեան)։ Արդարև Բուզանդ, որ ստէպ «աթոռ» կամ «վիճակ» Թադէոսի կ՚անուանէ զՀայս՝ չյիշեր ամենևին զԲարթողիմէոս։

Զարմանալի է որ Հայք մոռցած են զԹոմաս, զոր պարտ էր մանաւանդ կոչել պաշտպան Հայոց։ Նմա յանձնուեցաւ, եթէ պարտ է հաւատալ աւանդութեան՝ գրել պատասխանի թղթոյն Աբգարու, և նա էր դարձեալ որ ղրկեց զԹադէոս։ Խորենացին, հաւատարիմ իւր սովորութեան՝ հոս ևս կը ցուցնէ մեզ իւր աղբիւրը. «Գտանի, ասէ, որ ինչ առ սոցա ժամանակաւ (Անանուան և Սանատրկոյ)՝

յառաջագոյն գրեալ յայլոց. իմա զգալուստ առաքելոյն ի Հայս (այսինքն գնալն Թադէոսի առ Սանատրուկ յետ դարձին Աբգարու, ինչպէս պատմեց ԼԳ. գլխոյն մէջ), հաւատալն Սանատրկոյ և թողուլ զհաւատն յերկիւղէ նախարարացն Հայոց, և կատարումն առաքելոյն և որ ընդ նմա ի գաւառին Շաւարշան որ այժմ կոչի Արտազ, և պատառումն քարին և յերար գալ և ընդունել զմարմին առաքելոյն, և առնուլ անտի աշակերտացն և թաղել ի դաշտին, և մարտիրոսանալ թագաւորի դստերն Սանդխտոյ հուպ ի ճանապարհն, և աստ ուրեմն յայտնել նշխարաց երկոցունց և փոխել յառապարն։ Այս ամենայն, ասէ, որպէս ասացաք՝ յայլոց պատմեալ է յառաջագոյն քան զմեզ, ոչինչ կարևորագոյն համարեցաք ոճով երկրորդել։ Դոյնպէս և որ ինչ վասն կատարմանն Ադդէի, աշակերտի առաքելոյն յեդեսիա յորդւոյն Աբգարու՝ գտանի յայլոց պատմեալ յառաջագոյն քան զմեզ»։ Զիք տարակոյս, թէ առ Խորենացւով և յառաջագոյն իսկ կային վկայաբանական գրուածներ ասորերէն կամ յունարէն (յորոց մին էր Ղեբուբնա) զդարձէն Աբգարու և զանուանեալ առաքելոց Հայոց Թադէոսէ և Բարթողիմէոսէ ևս և զՍիմոնէ։ Թէ կային այսպիսի գրուածներ, որ համարուած էին պատմութիւն Հայոց՝ յայտնի է և ի Բուզանդայ, որ կը դնէ յառաջ քան զիւրն ուրիշ երկու պատմութիւն, որ կը թուին լինել երկու վկայաբանութիւնք, մին՝ զառաջնոյ դարձէն ի ձեռն Թադէի առ Սանատրկաւ, և երկրորդն՝ զերկրորդ դարձէն ի ձեռն Լուսաւորչին առ Տրդատաւ (Տես Բուզ. Գ. Ա.)։ Խորենացին կը յիշէ նաև զկատարումն Սիմովնի, զոր չգիտեր թէ ով էր (Խոր. Բ. ԼԴ.)։ Բայց մեք թողեալ զայս ամենայն, իբրև արտաքոյ մեր նպատակին՝ գանք առ Սանատրուկ։

Սանատրուկ էր, ըստ Խորենացւոյն, քեռորդի Աբգարու, զոր որպէս թէ Աբգար առ կենդանութեամբ իւրով «կարգեալ էր ի վերայ աշխարհին» (այսինքն ի վերայ Մեծին Հայոց) և զօրացն, և որ յետ մահուն Աբգարու «զօրս ժողովէ ի ձեռն քաջացն Բագրատունեաց և Արծրունեաց դայեկաց իւրոց՝ իջանել տալ պատերազմ ընդ որդւոյն Աբգարու, զի բոլորին տիրեսցէ թագաւորութեան», մերժելով զորդին Աբգարու զԱնանունն, որ նորոգեց հեթանոսութեան պաշտօնը, սպան զԱդդէ, բայց և ինքն սպանաւ արկածիւ, այսինքն ի սեանէ, որ իյնալով ի վերնատանէ ապարանիցն ջախջախեց զոտս նորա։ «Եւ իսկոյն, կ'ըսէ, պատգամ բնակչաց քաղաքին եկն առ Սանատրուկ, խնդրելով պայման ուխտի, զի մի վրդովեսցէ զնոսա ի քրիստոնէութեան հաւատոց, և նոքա տացեն զքաղաքն ի ձեռս և զգանձս թագաւորին. զոր արարեալ՝ յետոյ ստեաց. նա և

զամենայն զաւակ տանն Աբգարու մաշեաց սրով բաց յաղջկանց, զորս եհան ի քաղաքէն բնակել ի կողմանս Հաշտենից»։

Ի գլուխն ԼԶ. յառաջ կը տանի Խորենացին զպատմութիւն Սանատրկոյ, որոյ գործերը չհամարելով յիշատակաց արժանի՝ կը յիշէ միայն զշինութիւն Մծբնայ. որպէս թէ Սանատրուկ նորոգեց զայն ի հիմանց, որ խախտեալ էին ի շարժմանէ, և կանգնեց զիւր պատկերն ի միջի, «մի դրամ ի ձեռին ունելով», որ կը նշանակէր՝ թէ «ի շինել քաղաքիս ամենայն գանձքս ծախեցան, և այս միայն մնաց»։ Չամչեան այնչափ ճշմարիտ կը համարի այս պատմութիւնը՝ մինչև թուել ընդունել ոմանց ստուգաբանութիւնը, թէ Մծբին է աղաւաղեալն հայերէն բառին «Մնաց մին»։ Արդարև ամէն անտեղութիւն պարտ է ընդունել, արդարացունելու համար զԽորենացին։

Բայց Խորենացին, սիրող ստուգաբանութեան՝ կ՚ստուգաբանէ նաև զանունն Սանատրուկ, իբրև «տուրք Սանոտայ»։—«Բայց թէ ընդէր Սանատրուկ կոչեցաւ՝ ասելի է։ Քանզի յաւուրս ձմերայնոյ ճանապարհորդեալ ի Հայս քոյր Աբգարու Ադէ՝ պատահէ բքոյ ի լերինս Կորդուաց. ցրուեաց զամենեսեան մրրիկ, մինչ ոչ գիտելով ընկեր զընկեր՝ ընդ ո՛ր վարեցաւ։ Իսկ դայեկին նորա Սանոտայ, քեռ Բիւրատայ Բագրատունւոյ, կնոջ Խորենայ Արծրունւոյ, առեալ զմանուկն, քանզի տղայ էր՝ եդ ի մէջ ստեանց իւրոց, մնալով ի ներքոյ ձեանն զերիս տիւս և զերիս գիշերս։ Զորմէ առասպելաբանեն, եթէ կենդանի իմն նորահրաշ սպիտակ յաստուածոցն առաքեալ՝ պահէր զմանուկն։ Բայց որչափ եղաք վերահասու՝ այսպէս է. շուն սպիտակ ընդ խնդրակսն լեալ, պատահեաց մանկանն և դայեկին։ Արդ կոչեցաւ Սանատրուկ, ի դայեկէն զանուանակոչութիւնն առեալ, որպէս թէ տուրք Սանոտայ։ Սա թագաւորեալ յերկոտասաներորդի ամի Արտաշիսի Պարսից արքայի, կեցեալ ամս երեսուն՝ մեռաւ յորսի, նետիւ ուրուք դիպեալ փորոտեացն, իբր թէ վրէժս հատուցեալ ընդ չարչարման սրբոյ դստերն»։

Չէ պարտ մոռանալ սակայն, թէ անունն Սանատրուկ կայ ի պատմութեան յառաջագոյն իսկ քան զայս Սանատրուկ։ Մին ի Պարթև թագաւորաց, Արշակ ԺԱ. (86—70 Ն.Ք. գՔր.) կը կոչուէր Սանատրուկ, Σανατρούχης ըստ դաՀեկանաց, և թարգմանիչ Գ. Մակաբայեցւոց կը կոչէ Սանատրուկ զՍենեքերիմ արքայ Ասորեստանի։ Խորենացին յարելով—«Ղերուբնայ որդի Ափշադարայ դպրի գրեաց զամենայն գործս որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ, և եդ ի դիւանին յԵդեսիա»՝ կու տայ գուշակել, թէ դարձեալ Եդեսիոյ դիւանն էր աղբիւր նորա, թէպէտ չըսեր, և չէ հաւանական, թէ անձամբ քաղեց զայսոսիկ Խորենացին այն համբաւաւոր ասորական

դիւանէն, որ իբրև հասարակաց տեղի է Խորենացւոյն այն ժամանակին պատմութեան։ Յիշելով զբան Րընանի, թէ գործք դիւանին Եդեսիոյ առաջնոյ դարուն կը կրեն առասպելական դրոշմ՝ անցնինք յառաջ։

Թող խառնակութիւնը, որ կը տիրէ Խորենացւոյն այս պատմութեան մէջ, ուր քաղաքականն խառն է ընդ եկեղեցականին լի հրաշալեօք, թող և աղբիւրներու շփոթութիւնը, որ կոյտ մըն է ասորական առասպելաց՝ ժամանակակից պատմութիւնն, զոր կու տան մեզ յոյն և հռոմայեցի պատմիչք ժամանակին (Տակ., Յովս., Սուետոն, Դիոն) և դահեկանք, յայտնի և որոշ թուականօք՝ կը բառնան ամէն տարակոյս, թէ Խորենացին, թերևս նպատակաւ ջնջելու զհետս օտար ազդեցութեան իւր հայրենեաց պատմութենէն, արհամարհոտ իմն լռութեամբ թողլով զանցս բուն Հայոց՝ Ուռհայաստանի պատմութիւնը կու տայ մեզ իբրև մի միայն Հայոց պատմութիւն, աննշան Մանովաներով և Աբգարներով։ Մենք արդէն համառօտեցինք ինչ որ յիշեալ օտար, բայց ժամանակակից աղբիւրք ունին զՀայոց յԱրտաւազդայ մինչև ի Տիրիթ կամ ի Տրդատ Ա., այսինքն 5-էն նախ քան զՔր. մինչև 53 յետ Քրիստոսի։ Կը մնայ խօսել սակաւուք զՍանատրկոյ իբրև արդարև թագաւորէ Հայոց, թէպէտ նոր և օտար հարստութենէ, և դրուած Հայոց վրայ։

Խորենացին չգտներ յիշատակաց արժանի գործ Սանատրկոյ բաց ի շինուածոյ Մծբին քաղաքի։ Թէ Սանատրուկ, իբրև թագաւոր Հայոց և Ուռհայաստանի, այն թուականին շինեց զՄծբին վերստին ի հիմանց՝ չիք յիշուած ի պատմութեան։ Բուզանդ զՄծուրս, քաղաք առ իւրով ժամանակաւ, ոչ հեռի յԱշտիշատէ, ուր Եփրատայ երկու բազուկք կը միանան՝ կը յիշէ շինուած ի Սանատրկոյ.—«Ի գետախառնունսն երկուց գետոցն... ի հնոցն իմն շինած քաղաք, զոր շինեալ Սանատրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք կոչի» (Բուզ. Դ. ԺԴ.)։ Բուզանդ կը յիշէ նաև շիրիմ մեծագործ Սանատրկոյ զոր Պարսիկք չկրցան քակել.—«Բայց միայն զգերեզման շիրմին Սանատրկոյ արքային ոչ կարացին բանալ վասն անհեդեդ սկայագործ հաստաշինած ճարտարագործ արարածոցն» (Բուզ. Դ. ԻԴ.)։ Բուզանդ կոչելով այլուր զՍանատրուկ «առաքելասպան», և «յակամայ հնազանդեալ հաւատոցն»՝ կը ցուցնէ թէ չէր անտեղեակ վկայաբանութեանն Թադէոսի, որ կար տպաքէն առ իւրով ժամանակաւ։

Բայց Սանատրուկ կը թուի լեալ եղբայրն Փարսմանայ, Միհրդատ Վիր, զոր կացոյց Տիբեր ի վերայ Հայոց (35—45), և այս յայտնի է մանաւանդ յաղիողորմ վախճանէ նորա, կնոջն և որդւոյ

(տես Տակիտ. Պատմ. ԺԲ, ԽԴ, ԾԲ, զոր կ'ակնարկէ և Խորենացին Բ. ԼԷ.) ի դաւաճանութենէ Հռադամիստայ, Փարսմանայ որդւոյն, որոյ և՛ անձին և՛ բարուց հանգամանք գրեթէ աներկբայելի կ'ընեն, թէ է Երուանդն Խորենացւոյն։ Ոչ այսչափ միայն. Արտաշէս ևս եբր որդի Սանատրկոյ, տղայ, զոր Խորենացին կը դնէ «ապրեալ ի կոտորածէն Երուանդայ» և զորոյ պատմութիւնն այնպէս երկար կը բերէ անգին հատակոտորներով երգոց վիպասանաց, առ որս կը զրկէ վստահութեամբ զկարծեցեալ Մեկենաս իւր զԲագրատունին Սահակ (Խոր. Բ. ԽԹ.)՝ ոչ այլ ոք է՝ եթէ ոչ դարձեալ Տիրիթն կամ Տրդատ Տակիտոսի։ Զայս վճիռ կու տայ և կորովին Գաթըրճեան, (այլուստ այնպէս երկիւղած, մանաւանդ թէ երկչոտ), նոյն համարելով զԱրտաշէս Բ. Խորենացւոյն ընդ Տիրիթայ կամ Տրդատայ Տակիտոսի։ Ահա բանք նորա. «Ի բաց եդեալ զհանգամանս ժամանակաց, զոր տայ Մ. Խորենացի պատմութեան Արտաշիսի Բ. (տալով սմին 41 ամս թագաւորութեան ըստ հաշուի, այլ ըստ համեմատութեան դիպացն՝ աւելի քան զամս 75 ընծայելով, այնուգի համեմատէ զդէպսն Արտաշիսի ընդ ժամանակաց Ներոնի, Վեսպիանու, Տիտոսի, Դոմետիանու, Ներուայ, Տրայիանոսի և Ադրիանու իսկ), զայս ասեմ և զայլ ևս ինչ հանգամանս պատմութեան առ Խորենացւոյն ի բաց թողեալ, այնչափ ինչ նմանութիւն գոյ պատմութեանն Արտաշիսի Բ. ըստ դիպացն ընծայելոց յերգոցն վիպասանաց՝ ընդ պատմութեան Տրդատայ առ Տակիտայ և Ցովսեպայ (տես էջ 107—124), մինչև գրեթէ առանց յերկուանաց մարթի նոյն զերկոսին համարել։ Գլխաւոր կէտք համեմատութեան են՝ Ա. Դիր և աղերս Պարթևաց և Հռոմայեցւոց ընդ միմեանս, նոյն յերկոսին ևս պատմութիւնսն. Բ. Ցերկոսին ևս՝ մերժի յայնժամու թագաւորն Հայոց, և ի Պարթևաց կացուցանի զօրօք (անդ ի ձեռն Սմբատայ, աստ ի ձեռն Վասակայ) թագաւոր Հայոց. Գ. Որպէս աստ, նոյնպէս և անդ Փարսման ումն արքայ Վրաց է հակառակ Պարթևաց և Հայոց. Դ. Դոմետ ումն ըստ երգոցն վիպասանաց (Դոմիտիոս Կորբուղոնն Տակիտեայ) եկեալ ի Հռոմայեցւոց կողմանց հակառակ թագաւորին Հայոց հաստատելոյ ի Պարթևաց. Ե. Ե՛ւ անդ և՛ աստ շինութիւն Արտաշատ քաղաքի. Զ. Մարտ պատերազմի ընդ Ալանաց (երկիցս).—Թող զայլ ինչ մերձաւորագոյն յիշատակս առ Խորենացւոյն, որպիսի ինչ հռոմէական զօրաց չժամանել ի դէպ ժամու յօգնականութիւն (Երուանդայ). յետ Արտաշիսի գրաւելոյ յինքն զաշխարհն՝ հասանել Հռոմայեցւոցն լեգէոնաց անագան. երթալ (Արտաշիսի) ընդ առաջ կայսեր և ցածուցանել զնա, և այլ ևս նոյնպիսիք»։

Եթէ քաջ միտ դնէր Գաթըրճեան հանգամանաց պատմութեան նախորդացն Արտաշիսի, այն է պատմութեան Սանատրկոյ և Երուանդայ՝ պիտի ընդունէր յառաջ քան զմեզ, թէ Սանատրուկ էր Միհրդատն Վիր, և Երուանդ՝ Հռադամիզդն Տակիտոսի։ Զիարդ և իցէ՝ կը թուի թէ աստուածաբանական երկիւղածութիւնն բաւական ազդեցութիւն ունեցած է սուր և հատու մտաց մեր վաղեմի կրօնակցին, ուստի և շատ բան կը շնորհէ պատուոյն և համբաւոյ ծերունի հայ պատմագրին, որոյ խոտորելն ժամանակակից պատմութենէ ոչ իւր յանցանք են, այլ խորագէտ հնարից աղբերաց նորա, որ կ'ընտրեն ունենալ թագաւոր պոռնկորդի (Երուանդ) մանաւանդ քան ի Հռոմայեցւոց կամ ի Պարթևաց տրուած թագաւոր։

Ըստ աղբերաց Խորենացւոյն (Գլ. Լէ.)՝ ինչպէս Սանատրուկ է քեռորդի Աբգարու անյայտ հօրէ, նոյնպէս Երուանդ է որդի վատոհմուն կնոջ Արշակունւոյ.—«Կին ոմն, կ'ըսէ, յազգէ Արշակունեաց, անձամբ խարտի և խոշորագեղ, վարար, զոր ոչ ոք դիմագրաւեաց առնուլ կնութեան, ծնանի երկուս մանկունս յանկարգ խառնակութենէ, որպէս Պասիփայէ զՄինոտավրոս։ Եւ ի զարգանալ մանկանցն՝ կոչեն անուանս Երուանդ և Երուազ։ Եւ ի չափ հասեալ Երուանդայ՝ լինի սրտեայ, անդամովք յաղթ։ Սա ի բազում իրս վերակացու առաջնորդութեամբ առաքեալ ի Սանատրկոյ, գտանի երևելի, մինչև ամենայն նախարարացն Հայոց սիրելի լինել. և խոնարհութեամբ և առատաձեռնութեամբ զամենայն ոք յինքն յանկուցանէր։ Եւ ի մեռանելն Սանատրկոյ՝ միաբանեալ թագաւորեցուցին զնա առանց յազգէ Բագրատունեաց լինել թագադիր։ Բայց ի թագաւորելն իւրում Երուանդ, կասկած ունելով յորդւոցն Սանատրկոյ՝ կոտորէ զամենեսեան»։

Եթէ պարտ է հաւատալ Խորենացւոյն՝—և արդարև չթուիր հեռի ի ճշմարտութենէ—Երուանդ, ինչպէս բարուքն՝ նոյնպէս հայեցուածովն էր դժնեայ, մինչև համարել դիւական.—«Բայց ասեն զԵրուանդայ՝ ըստ հմայից դժնեայ գոլով ական հայեցուածով. վասնորոյ ընդ այգանալ աչալրջացն սովորութիւն ունել սպասաւորացն արքունի՝ վէմս որձաքարեայս ունել ընդդէմ Երուանդայ, և ի հայեցուածոցն դժնէութենէ ասեն պայթել որձաքար վիմացն։ Բայց այս կամ եղիցի սուտ և առասպել, և կամ դիւական ինչ առ իւր ունել զօրութիւնս, զի այսպէս հայեցուածոցն անուամբ վնասեսցէ զորս կամի» (Խոր. Բ. ԽԲ.)։

Չէ ամենևին անհաւանական, թէ Երուանդ ըստ Խորենացւոյն իւր ութևտասն կամ քսանամեայ (ըստ արտաքին պատմութեան՝ իբրև Հռադամիզդ իւր իննամեայ) թագաւորութեան ժամանակ բրաւ

գեղեցիկ շինուածներ.—«Յաւուրս սորա փոխին արքունիքն յԱրմաւիրն անուանեալ բլրոյն. քանզի էր հեռացեալ գետն Երասխ, և յերկարել ձմերայնոյն, և ի դառնահոտ շնչմանէ հիւսիսոյ պաղացեալ ձուլեալ վտակն՝ ոչ ուստեք արբուցումն բաւական թագաւորականին գտանէր տեղւոյ։ Ընդ որ նեղեալ Երուանդայ, նա և ամրագունի ևս տեղւոյ եղեալ ի խնդիր՝ փոխէ զարքունիսն յարևմուտս կոյս ի քարակտուր մի բլուր, զորով պատ առեալ Երասխայ ընդդէմ Ախուրեանն հոսի գետ։ Պարսպէ զբլուրն, և ի ներքսագոյն քան զպարիսպն ընդ բազում տեղիս կտրեալ զքարինսն մինչև յատակս բլրոյն հաւասար գետոյն, մինչև դիմել ջուրց գետոյն ի փորուածն, յըմպելեաց պատրաստութիւն։ Զմիջնաբերդն ամրացուցանէր բարձր պարսպօք, և դրունս պղնձիս կանգնէր ի միջոցի պարսպին, և ելանելիս երկաթիս ի ներքուստ ի վեր մինչև ցդուռնն, և ի նմա որոգայթս իմն ծածուկս ընդ մէջ աստիճանացն, որպէս զի ըմբռնեսցի՝ թէ ոք գաղտ ելանելով դաւել կամիցի զարքայն։ Եւ էր, ասեն, երկդիմի, որպէս զի մինն լիցի սպասաւորացն արքունի և ամենայն ելևմտից ճանապարհ տուընջենային, իսկ միւսն գիշերային և մարդադաւաց»։

Նկարագիր Խորենացւոյն կը թուի այս։ Երուանդ յարևմտից Արմաւրի գտնելով քարաբլուր մի մօտ յԵրասխ՝ պատեց զայն պարսպաւ, և բացաւ քարաբլրոյն յատակէն մինչև ի յատակ գետոյն ջրանցներ, ընդ որս կու գար ջուր ի քաղաքն։ Ի գագաթան քարաբլրոյն շինեց դուռն, յոր մարթ էր ելանել երկաթի սանդղով, որ ունէր երկուստեք աստիճաններ։ Միոյ կողման աստիճաններուն վրայ կային ծածուկ որոգայթներ, այնպէս որ եթէ ոք յանդէտս ելանէր այն աստիճաններէն՝ կը բռնուէր։ Սանդղոյն մի կողմն էր տուընջեան համար ի պէտս սպասաւորաց և վասն մտից ելից, և էր բաց ի տուընջեան. միւս կողմն, որոյ աստիճաններուն վրայ էին որոգայթք՝ կը բացուէր գիշերը. ով գիշերայն կամէր մտնել ի սենեակ թագաւորին դաւելու համար զնա՝ կը բռնուէր։ Արդարև զարմանալի շինուած, եթէ ճշմարիտ է բան Խորենացւոյն։

«Բայց Երուանդ շինեալ զքաղաքն իւր և փոխեալ անդր զամենայն ինչ յԱրմաւրայ, ուրոյն ի կռոցն, զոր ոչ օգուտ իւր համարեցաւ յիւրն փոխել ի քաղաքն, զի մի ի գալն և ի զոհել անդ աշխարհի, ոչ զգուշութեամբ պահեսցի քաղաքն. այլ հեռագոյն ի նմանէ իբր քառասուն ասպարիսաւ զհիւսիսով նման իւրոյ քաղաքին շինեաց քաղաք փոքր ի վերայ գետոյն Ախուրենայ և անուանեաց Բագարան, այսինքն թէ ի նմա յօրինեալ է զկազմութիւն բագնացն, և փոխեաց անդր զամենայն զկուռսն որ յԱրմա-

ւիր։ Եւ մեհեանս շինեալ՝ զեղբայր իւր զԵրուազ քրմապետ կացուցանէր։

Այս երկու քաղաքներն շինեց Երուանդ իւր ապահովութեան համար։ Բայց կասկածոտ բռնաւորն չմոռցաւ նաև իւր զուարճութիւնը, ուստի և տնկեց անտառ.—«Տնկէ և մայրի մեծ ի հիւսիսոյ կողմանէ գետոյն, և որմովք ամրացուցանէ, արգելլով ի ներքս այծեմունս երագունս, և զեղանց և զեղջերուաց ազգ, և ցիռս և վարազս. որք ի բազմութիւն աճեցեալ լցին զանտառն, որովք ուրախանայր թագաւորն յաւուրս որսոց։ Եւ անուանէ զանտառն Ծննդոց»։

Քան զանտառն գեղեցիկ էր գիւղն, զոր ձեռակերտ կ'անուանէ Խորենացին, և կը պատմէ ախորժելով. «Քաղցր է ինձ ասել և յաղագս գեղեցիկ դաստակերտին Երուանդակերտի, զոր յօրինեաց նոյն ինքն Երուանդ գեղեցիկ և չքնաղ յօրինուածովք։ Քանզի զմիջոց հովտին մեծի լնու մարդկութեամբ և պայծառ շինուածովք, լուսաւոր որպէս ական բիբ. իսկ շուրջ զմարդկութեամբն՝ ծաղկոցաց և հոտարանաց բազմութիւն, որպէս շուրջ զբբօքն զայլ բոլորակութիւն ական։ Իսկ զբազմութիւն այգեստանոյ, իբրև զարտևանաց խիտ և գեղեցիկ ծիր. որոյ հիւսիսային կողմանն դիր կարակնաձև՝ արդարև գեղաւոր կուսից յօնից դարևանդաց համեմատ։ Իսկ ի հարաւոյ հարթութիւն դաշտաց՝ ծնօտից պարզութեան գեղեցկութիւն. իսկ գետն բերանացեալ դարաւանդօք ափանցն՝ զերկթերթիւն նշանակէ շրթունս։ Եւ այսպիսի գեղեցկութեան դիր՝ անքթթելի իմն գոգցես ի բարձրաւանդակ թագաւորանիստն զհայեցուածսն ունի. և արդարև բերրի և թագաւորական դաստակերտն»։ Խորենացին Երուանդաշատ կ'անուանէ քաղաքը, և Երուանդակերտ՝ գիւղը։

Գանք այժմ ի պատմութիւն Արտաշիսի ըստ Խորենացւոյն։ Ի պատմութեան Խորենացւոյն ևս Արտաշէս (Տրդատ) կու գայ Պարթևաց զօրօք, բայց ոչ իբրև եղբայր Վաղարշու, առաքեալ փոխանակ Երուանդայ (Հռադամիզդ) ի հեծուկս Հռոմայեցւոց, այլ իբրև մանուկ տղայ, որդի Սանատրկոյ, ապրեալ ի կոտորածէն Երուանդայ և փախուցեալ ի Պարթևս. կը պատերազմի ոչ ընդ զօրս Հռոմայեցւոց, այլ ընդ զօրս Երուանդայ, ուր կը յիշուի և Փարսման՝ վրացի զօրօք։ Չյիշուիր այս պատմութեան մէջ ո՛չ Ներոն, ո՛չ զօրավար նորա Դոմիտիոս Կորբուղոն, զոր գիտէ երգն վիպասանաց, ոչ երթալն Արտաշիսի (Տրդատայ) ի Հռոմ և պսակելն ի Ներոնէ, և այլ բազում ինչ՝ զոր այնպէս մանր կը պատմէ Տակիտոս։ Այսպէս ի պատմութեան Խորենացւոյն հռոմէական միջամտութիւնն ծածկուած է քողով, պարթևականն՝ ըստ մասին։ Որովհետև արտաքին

աղբիւրն, ժամանակակից, չկարէ լինել սուտ, որչափ և խստիւ գատենք՝ յայտնի է ուրեմն, թէ աղբիւր Խորենացւոյն, ինչպէս միշտ՝ նոյնպէս աստ կը ջանայ բառնալ պատմութենէն զհետս օտար ազդեցութեան։ Տեսանք Տակիտոս իւր բոլոր պարագաներով. տեսնենք արդ զԽորենացին, առ որում, թող զայն մասնաւոր դիտումն հեռացունելու զօտարն՝ շատ բան եթէ ոչ ճշմարիտ, գէթ հաւանական է։

Ահա պատմութիւնն Արտաշիսի ըստ Խորենացւոյն. «Բայց ի թագաւորելն իւրում Երուանդ, կասկած ունելով յորդւոցն Սանատրկոյ՝ կոտորէ զամենեսեան... բայց մի ոմն տղայ Արտաշէս անուն, զոր առեալ ստնտուի նորա՝ փախեաւ ի կողմանս Հերայ, ի հովուավանս Մաղխազանի (հանգրուանք Մաղխազեան, արքունի, հովուաց, որ էին Մարաց, այժմու Քրդերու ցեղէն)։ Լուեալ դայեկի նորա Սմբատայ, որդւոյ Բիւրատայ Բագրատունւոյ ի Սպեր գաւառի, զբօթն Սանատրկոյ և զգոյժ կոտորման որդւոց նորա... գայ անցանէ ի խնդիր մանկանն Արտաշիսի։ (Աղբիւր Խորենացւոյն, կամ թերևս ինքն Խորենացին, ո ոք և է, ի շնորհուկս Մեկենասին իւրոյ Սահակայ Բագրատունւոյ, ինչպէս բազում ուրեք՝ նոյնպէս աստ կը մուծանէ իբրև գլխաւոր գործող ի պատմութեան Արտաշիսի զՍմբատ Բագրատունի. հռոմէական աղբիւրն Տակիտոս չգիտեր ըզՍմբատ, այլ գիտէ Վասակ ոմն սպարապետ պարթևական զօրուն. բայց և այնպէս չէ անհաւանական, թէ մեծ նպաստ եղան Արտաշիսի (Տրդատայ) Բագրատունիք, թողլով դայեկութեան խնդիրը)։ Որում իրազգած եղեալ արքային Երուանդայ՝ հետայոյզս առաքէ. վասնորոյ բովանդակ ժամանակս ընդ երեսս լերանց և դաշտաց այլակերպեալ շրջելով հետի հանդերձ մանկամբն՝ սնուցանէ ի հովուավանս և յանդէորդս, մինչև պարապ գտեալ ժամ՝ անցանէ առ Դարեհ արքայ Պարսից։ (Զիք այսու անուամբ ևս թագաւոր Պարթևաց ո՛չ ըստ պատմագրաց և ոչ ըստ դահեկանաց. թերևս ըստ դիպաց իմն կամ խորհրդով փոխուած է անուն Վաղարշու ի Դարեհ)։ Եւ քանզի այր քաջ էր Սմբատ և ծանօթ յառաջագոյն՝ պատուի մեծապէս ընդ զօրագլուխսն Պարսից, որպէս և մանուկն ընդ որդիս թագաւորին։

«Բայց Երուանդայ զմտաւ ածեալ, թէ որպիսի՛ չար թագաւորութեան նորա սնանի ի Մարս, խէթ սրտի լեալ՝ ոչ հեշտալի էր նմա քուն։ Հանապազ ի յարթնութեան յայն հոգալով, նաև ի քուն անուրջս ահագինս նմին իրի տեսանէր։ Վասնորոյ ի ձեռն հրեշտակաց և պատարագաց խնդրէր հաշտեցուցանել զարքայն Պարսից, տալ ի ձեռս զԱրտաշէս, ասելով, թէ Արիւն իմ և հարազատութիւն,

ջնջէր սնուցանես զմարըդ Արտաշէս հակառակ ինձ և իմոյ թագաւորութեանս, լսելով բանից Սմբատայ յեկուզակի, որ ասէ թէ որդի է Արտաշէս Սանատրկոյ. և զորդի հովուաց և զանդէորդաց ջանայ առնել Արշակունի, և արիւն քո և հարազատութիւն համբաւելով զնմանէ։ Նա չէ որդի Սանատրկոյ, այլ ընդ խաբս գտեալ Սմբատայ զմար ումն աղայ՝ բաջաղի։ Նոյնպէս և առ Սմբատ յղէր բազում անգամ, թէ ընդէր այդ քո սնոտի աշխատութիւնդ, խաբեալ ի սոնոտւէդ, սնուցանես զորդի մարին հակառակ ինձ։ Եւ լսէ ոչ սիրելոյ բանս պատասխանեաց։... Բայց թիկունս արարեալ Երուանդայ զՀռոմայեցիս՝ ոչ ինչ վտանգի ի թագաւորութեանն Վեսպիանու և Տիտոսի, թողլով ի Նոսա զՄիջագետս։ (Ահա Խորենացւոյն ժամանակագրական մեծագոյն սխալներէն մին—դնել զԵրուանդ առ Վեսպասիանոսիւ և առ Տիտոսիւ, այն է մինչև 80 յետ Քր..ի. այսպէս ժամանակ թագաւորաց և երևելի երևելի անցք պատմութեան Հայոց կը խախտին համեմատութենէն՝ զոր ունին կայսերաց և Պարթև թագաւորաց ժամանակներուն հետ, և կ՚անագանին բազում ամօք յԵրուանդայ և այսր. այնպէս որ Արտաշէս, որ ըստ երգոց վիպասանաց իսկ արդէն թագաւորած էր ի սկզբան կայսրութեան Ներոնի (54)՝ լինի թագաւորեալ Տիտոսի վերջին տարին (80), այսինքն իբր 27 և աւելի ևս ամօք յետոյ քան զբուն ժամանակն, և մահ նորա, որ եղաւ Դոմետիանոսի առաջին տարին (81)՝ լինի եղած Ադրիանոսի գրեթէ վերջընթեր տարին (115), այսինքն իբր 35 ամօք յետոյ քան զբուն ժամանակն)։

«Իսկ ի զարգանալ մանկանն Արտաշիսի, և ի բազում արութիւնս քաջութեան ցուցանել դայեկին Սմբատայ, հաճեալ ընդ նա նախարարք Արեաց՝ մաղթեն զթագաւորն տալ նմա պարգևս՝ զինչ և խնդրեսցէ։ Եւ յանձն առեալ թագաւորին՝ ասէ ցնախարարսն. Տեսէք զինչ կամի այրն քաջ։ Եւ նոքա ասեն. Անմահ բարերարութիւնդ քո, ոչ այլ ինչ կամի Սմբատ, քան թէ զարիւնդ քո և հարազատութիւն, զԱրտաշէս որդի Սանատրկոյ, զմերժեալն ի թագաւորութենէ իւրմէ, հաստատել յիւրում թագաւորութեանն։ Եւ յանձն առեալ արքային արքայից՝ տայ ի ձեռն Սմբատայ մասն ինչ ի զօրացն Ասորեստանի և զզօրս Ատրպատականի, զի տարեալ զԱրտաշէս հաստատեսցեն ի գահն հայրենի։ Լուր հասանէ առ Երուանդ յՈւտէացւոց գաւառին, եթէ գումարեաց արքայն Պարսից զօր բազում ի ձեռն Սմբատայ, զի ի վերայ քո խաղացեալ ածցէ զմանուկն Արտաշէս ի թագաւորութիւն իւր։ Զայս իբրև լուաւ Երուանդ՝ եթող անդէն զբազումս ի նախարարացն կողմնապահս, և ինքն գնաց ի քաղաքն իւր փութանակի, կուտել առ ինքն զզօրս

Հայոց և զՎրաց և զկողմանցն Կեսարու, այլ և Միջագետացն աւերսիւք և տրովք։ Եւ էին աւուրք գարնայնոյ. վասնորոյ երագ ժողովեցան զօրքն ամենայն. նաև Արգամ տանուտէր ազգին Մուրացան, որ ի ծննդոցն Աժդահակայ, ամբոխ հեռևակաւ։ Քանզի էր Երուանդայ դարձուցեալ ի նա զգահն երկրորդական, զոր հանեալ էր ի նոցանէ Տիգրանայ և տուեալ էր իւրում քեռայրն Միհրդատայ. իսկ յետ մահուանն Միհրդատայ ոչ լինէր ումեք տուեալ, մինչև Երուանդայ դարձուցանել զնա առ Արգամ։ Եւ ոչ միայն զնա, այլ և ամենայն նախարարացն տայր պարգևս, և զօրացն ամենեցուն պարգևէր առատապէս։ (Խորենացին կոչելով զԱրգամ «ի ծննդոցն Աժդահակայ»՝ կը թուի ակնարկել Մարաց ցեղութիւնը, զորմէ տես յառաջնում մասին Պատմութեան մերոյ, էջ 195, յօդուած 44։ Իսկ վասն Միհրդատայ, եթէ Խորենացին այս անուամբ կ'իմանայ զմեծն Միհրդատ Եւպատոր, արքայ Պոնտոսի՝ չթուիր ճշմարիտ պատմութիւն։ Թող որ Միհրդատ չէր քեռայր Տիգրանայ, այլ աներ նորա՝ ոչ ուրեք յիշուած է, թէ եղև նա երբէք պաշտօնեայ, պատուով երկրորդական Տիգրանայ, իբր թէ փոխարքայ նորա)։

«Իսկ Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսիւ աճապարէր հասանել ի սահմանս Ուտէացւոց։ Ընդ առաջ նորա ելին զօրք այնր կողմանն, նաև նախարարքն զօրս եթող Երուանդ։ Զայն իբրև լուան այլ նախարարքն Հայոց՝ լուծանէին լքանէին և զատչել յԵրուանդայ խորհէին. նա և զայն ևս տեսանէին, եթէ զօրքն Հռոմայեցւոց ոչ հասանէին նմա ի թիկունս։ Իսկ Երուանդ առաւել ևս յորդորագոյն տայր զպարգևսն, և բաշխէր միոյ միոյ ումեք ի նոցանէ զգանձսն. և որչափ առատանայր՝ առաւել ևս ատելի լինէր։ Քանզի գիտէին ամենեքեան, եթէ ոչ առ առատութեան տայ, այլ առ երկիւղի վատնէ։ Եւ ոչ այնչափ սիրելի զայնոսիկ առնէր, որոց շատն տայր՝ քան թէ թշնամի զայնս, որոց ոչն տայր պերճագոյնս։

«Բայց Սմբատ հանդերձ մանկամբն Արտաշիսիւ ելանէ առ ափն ծովուն Գեղամայ, ղթիկամբք Արագածն կոչեցեալ լերինն. աճապարէին հասանել ի բանակն Երուանդայ։ Առ ոչինչ համարեալ զբազմութիւն զօրաց նորա՝ միայն կասկածէին ի Մուրացանէն Արգամայ, զի այր քաջ էր և բազում տէր տիգաւորաց։ Եւ ճամբարն Երուանդայ էր բացագոյն ի քաղաքէ նորին աւելի քան երեքհարիւր ասպարիսաւ ի հիւսիսոյ ի վերայ գետոյն Ախուրեան։ Զայս իբրև լսէր Երուանդ՝ հանէր ընդ առաջ զբազմութիւն զօրացն, և ճակատէր ոչ հեռի յիւրմէ բանակէն։ Իսկ Արտաշիսի առաքեալ պատգամ առ Արգամ նահապետ Մուրացանաց հանդերձ բազում երդմամբք, թո-

ղուլ ի վերայ նորա՝ զոր ինչ գտեալ է յԵրուանդայ, և կրկին այլ յաւելուլ, միայն զի զԵրուանդ թողեալ ի բաց գնասցէ։

«Եւ իբրև հանդէպ ճակատուն Երուանդայ ելին նշանք Արտաշիսի, Արգամայ առեալ զբազմութիւն հետևակացն՝ ի կողմ ելանէր։ Եւ Սմբատ հրամայէր զփողսն պղնձիս հնչեցուցանել, և յառաջեալ զճակատն իւր՝ իբրև զարծուի յերամս կաքաւուց խոյանայր։ Իսկ նախարարքն Հայոց որ յաջ և յահեակ թևսն էին՝ ի նա խառնեալ միանային։ Եւ զօրքն Վրաց հանդերձ արքայիւն իւրեանց Փարսմանաւ, թէպէտ և յանդուգն յարձակմամբ յառաջեալ բախէին՝ արագապէս դառնային ի միւս կողմն փախուցեալ։ Եւ անդ էր տեսանել կոտորած անհնարին զգնդին Երուանդայ և զզօրաց Միջագետաց։ Եւ ի խառնակել այսպիսի ճակատուց՝ պատահեն Արտաշիսի արք քաջք տաւրացիք, որոց զոգիս ի բաց եդեալ, Երուանդայ պայմանեալ սպանանել զԱրտաշէս։ Որոց դիպեալ՝ հետի ընդ մէջ անցանէր Գիսակ որդի ստնտուին Արտաշիսի, և սատակեալ զնոսա, ուր և զկէս դիմաց նորա ի վայր բերեալ սուսերաւ, զյաղթութիւն ստացեալ մեռանի ի վերայ այսպիսեացս։ Եւ մնացեալ զօրքն ի փախուստ դառնային։

«Իսկ Երուանդ ձիով իւրով բովանդակ ասպարէզս անցեալ երանէ ի խանս կարգեալս ի բանակէն իւրմէ ի քաղաքն իւր, հեծեալ ի նոր ձիս հանգոյց ի հանգուցէ փախչել։ Եւ քաջն Սմբատ զհետ մտեալ, սաստկագոյնս վարէր զնա ի գիշերի մինչև ցդուռն քաղաքին։ Եւ Մարաց զօրացն անցեալ ի կողմն երուանդական գնդին՝ նսեմաւ ի վերայ դիականցն բանակէին։ Իսկ Արտաշիսի հասեալ Երուանդայ՝ ի խորանս նորա բնակեցաւ զայն գիշեր. և այգուն եղելոյ՝ զսպանեալսն թաղել հրամայեաց. և անուանեաց զհովիտն ուր ի վերայ դիականցն բնակեցաւ՝ Մարաց մարգ, և զտեղի ճակատուն՝ Երուանդավան, որ կոչի մինչև ցայսօր ժամանակի, այսինքն եթէ յայսմ տեղւոջ վանեաց զԵրուանդ։ Եւ ինքն չուեաց ի քաղաքն Երուանդայ. յառաջ քան զմիջօրեայ հասեալ ի դաստակերտն Երուանդայ, և միաբան գոչմամբ հրամայեաց աղաղակել զօրացն՝ «Մար ամատ», որ թարգմանի Մարս եկն, յիշեցուցանելով զթշնամանսն զոր յղէր Երուանդ առ Թագաւորն Պարսից և առ Սմբատ, Մար զնա կոչելով։ Ցայսմ ի սոյն ձայն անուանեցաւ դաստակերտն Մարմէտ. իբր ի կամաց Արտաշիսի, բառնալ զանուն Երուանդայ ի տեղւոջէն. այս պատճառ է անուանակոչութեան դաստակերտին։

«Բայց Սմբատայ գիշերոյն զհետ մտեալ Երուանդայ, եկեալ սակաւ վաշտկանաւ՝ զդուռն քաղաքին պահէր մինչև ի գալն Արտաշիսի զօրացն ամենեցուն։ Եւ ի մարտնչել քաջացն ընդ ամրոցին՝ անձնա-

տուրք եղեն մարդիկ ամրոցին և բացին զդուռն քաղաքին։ Իսկ մի ոմն ի զինուորացն մտեալ եհար վաղերբ զգլուխն Երուանդայ, և ցրուեաց զուղիղն ի յատակս տանն. և այսպիսի ջախմամբ վախճանեցաւ, կալեալ զթագաւորութիւնն ամս քսան։ Բայց Արտաշիսի յիշեալ, թէ խառնուած Արշակունեաց է Երուանդ՝ հրամայէ զդի նորա թաղել մահարձանօք»։

Վերջին մասն այս գլխոյն չէ պատմական։ Ըստ Տակիտոսի, որ է աւելի հաւանական՝ Փարսման, հաճելու համար զՀռոմայեցիս՝ սպաննել տուաւ զԵրուանդ իբրև ակամայ մատնիչ երկրին. երկրորդ՝ քսան տարի տալ թագաւորութիւն Երուանդայ աւելի խմն է. երրորդ՝ լինել Երուանդայ Արշակունի և թաղելն պատուով իբրև այնպիսի՝ չէ ճշմարիտ, մինչ ըստ ժամանակակից պատմութեան էր նա որդի Վրաց թագաւորին, և Խորենացին կ’ընէ զնա որդի աննշան պառնիկ կնոջ Արշակունւոյ։

«Յետ մահուանն Երուանդայ մտեալ Սմբատայ՝ զարքունականսն յուզէր զգանձսն. և գտեալ զթագն Սանատրկոյ արքայի, (այսինքն զթագն թագաւորացն Արշակունեաց, որով հաւանականապէս պսակուած էր Սանատրուկ, բայց ոչ Երուանդ) դնէ ի գլուխն Արտաշիսի և թագաւորեցուցանէ ի վերայ ամենայն երկրիս Հայոց։... Իսկ Արտաշիսի առեալ զթագաւորութիւնն՝ տայ պարգևս զօրացն Մարաց և Պարսից, և արձակեաց յաշխարհն իւրեանց։ Տայ և առնն քաջին և պատուականին Արգամայ զխոստացեալ գահն երկրորդական, և պսակ յակնթակապ, և գինդ յերկոսին ականջսն, և կարմիր զգեստ միոյ ոտինն, տարգալ ունել ոսկի և պատառաքաղ, և ոսկեղինօք ըմպել նուագօք։ Եւ ոչինչ ընդհատ յայսց պատուոց տայ դայեկին իւրոյ Սմբատայ, բայց միայն յերկուց գնդաց և ի կարմիր կօշկէ. և աւելի քան զհայրենական զիւր թագակապ ասպետութիւնն և զիշխանութիւն արևմտեայ զօրուն՝ հաւատայ ի նա զամենայն զօրս Հայոց, և զբոլոր աշխարհիս զգործակալս (զպաշտօնեայս) և զհամօրէն տունն արքունի»։

Արտաշէս հաստատեց նաև, ըստ Խորենացւոյն, նոր ցեղեր յանուն ոմանց, որ մեծամեծ ծառայութիւններ ըրած էին ի պատերազմունս նորա և յառաջ։ Այսպիսի նոր ցեղեր եղան Տրունիք և Դիմաքսեանք։ Տրունիք կոչուեցան, իբրև ուրոյն ցեղ՝ հնգետասան որդիք Տուր անուն ուրումն, ոչ թէ ի վարձ ինչ քաջութեան, այլ վասն զի հայր նոցա Տուր, որ ընտանի էր Երուանդայ՝ կ’իմացունէր զգաղտնիս նորա Արտաշիսի, և ի պատճառս այս քսութեան սպանաւ յԵրուանդայ.—«Պատմի սորա (Արտաշիսի) ի նոյն աւուրս սերեալ ազգ զորդիսն Տուրայ, պատանիս հինգ հանդերձ տասամբ, յա-

նուն Հօր իւրեանց Տրունիս, ոչ վասն արութեան ինչ գործոց, այլ միայն վասն քսութեան Հօր նոցա, զոր առնէր ի տանէն արքայի առ Սմբատ, քանզի ընտանի էր Երուանդայ, սակս նորին և սպանաւ ի նմանէ» (Խոր. Բ. Խէ.)։ Ոչ զանուն այսր ցեղի և ոչ յանուանէ զոք յայնմ ցեղէ յիշուած կը գտնենք ուրեք, և ոչ իսկ առ Խորենացւոյն, բաց յայնմանէ զոր յիշեցինք։

Ինչպէս Տրունեաց՝ նոյնպէս Դիմաքսենից ցեղն Հաստատուեցաւ, ըստ Խորենացւոյն, յԱրտաշիսէ, բայց այս ի վարձ մեծի ծառայութեան։ Խորենացին զանունն Դիմաքսեան կ՚ստուգաբանէ երբեւ կիսադէմ. որպէս թէ Գիսակ, որդի ստնտուին Արտաշիսի, յազատելն զԱրտաշէս ի Տաւրացւոց Հարեալ սուսերաւ՝ կորոյս զկէս դիմացն, ինչպէս արդէն յիշուեցաւ.—«Զներսէս զորդի որդւոյ իւրոյ ստնտուին Գիսակայ, (ընթերցիր՝ «զորդի Գիսակայ որդւոյ ստնտուին իւրոյ»), ազգ զնա սերելով՝ անուն կոչէ զնաՀատակութեանց Հօրն՝ Դիմաքսեան. քանզի որպէս ասացաքն՝ զկէս դիմացն սուսերաւ ի վայր եբերին ի վերայ Արտաշիսի»։

Թէ արդարեւ «Դիմաքսեան» անունն, ըստ ստուգաբանութեան Խորենացւոյն, կը նշանակէ որդի կամ սերունդ Դիմակիսի՝ ինքնին չէ յայտ։ Դիտել արժան է նախ, թէ Հայերէն՝ նա որ կորոյս զկէս դիմացն, ըստ օրինաց բարդութեան կարէ կոչուիլ «կիսադէմ», բայց թէ կարէ կոչուիլ նաեւ «դիմակէս»՝ չենք գիտեր։ Սակայն դնենք թէ այսպիսի ինչ զարտուղութիւն ունէր Հին, մեզ անծանօթ Հայերէնն, այնպէս որ մարթ էր ասել անխտիր «զուարթադէմ» և «դիմազուարթ», «չքնաղադէմ», և «դիմաչքնաղ». և արդարեւ ունինք «լիաբերան» և «բերանալիր», «ունայնաձեռն» և «ձեռնունայն», թէպէտ կայ թեթեւ ինչ խտիր ի մէջ երկոցունց։ Կայ սակայն ուրիշ դժուարութիւն ընդունելոյ Գիսակայ Համար դիմակէս կամ կիսադէմ յորջորջումը։ Եթէ Գիսակ յետ կորուսանելոյ զկէս դիմացն ապրէր՝ թերեւս կոչուէր դիմակէս կամ կիսադէմ, ուստի և ցեղ նոցա «Դիմակիսեան», որ կարաց աղաւաղմամբ կամ կըրճատմամբ լինել «Դիմաքսեան»։ Բայց ըստ վկայութեան Խորենացւոյն՝ Գիսակ մեռաւ ի կռուին ի Հատանելոյ կիսոյ դիմացն, ուստի և չկարէ կոչուիլ դիմակէս։ Այն որ յետ կորուսանելոյ զաչս կամ զձեռն իւր կ՚ապրի՝ կրնայ կոչուիլ կոյր կամ ձեռնատ. բայց նա որ աչաց կամ ձեռաց կորստեան պատճառաւ կը մեռնի՝ չկոչուիր կոյր կամ ձեռնատ։ Միով բանիւ՝ Դիմաքսեան կոչումն այն ցեղին կրնայ ունենալ այլ պատճառ մեզ անծանօթ։ Զստուգաբանութիւն Խորենացւոյն կրնանք ընդունել միայն՝ դնելով թէ պատմութիւն ի վայր գալոյ կիսոյ դիմացն Գիսակայ սուսերաւ՝ է վաւերական. այսինքն՝

է առնուած ժամանակակից աղբերէ, զոր օրինակ յերգոց վիպասանաց և կամ ի մեհենական պատմութենէ Ուղիւպ (Ողիմպ) անուն քրմին Անւոյ, եթէ կար այնպիսի պատմութիւն և էր գլխաւոր աղբիւր Խորենացւոյն, որպէս ինքն ասէ, ի պատմութեան Արտաշիսի և Արտաւազդայ (Խոր. Բ. ԽԸ.)։ Ո՛չ ապաքէն կրնանք, այլ ստուգաբանութեանց պէս, և զայս ընծայել Խորենացւոյն անյագ-միտման ստուգաբանելու։ Սակայն կը թուի թէ Դիմաքսեանք էին հին ցեղ։ Առ Բուզանդայ, որ յետ երգոց վիպասանաց է հնագոյն պատմական յիշատակարան մեր պատմութեան՝ կը յիշուի առ Տիրանաւ Վարազ ոմն իշխան Դիմաքսենից, որ էր մին յիշխանաց առաքելոց ածել զծերունի եպիսկոպոսն Դանիէլ ի կաթողիկոսութիւն յետ մահուն Յուսկան.—«Եւ յղեցին առ նա (առ Դանիէլ) զՈմն իշխանն Սահառունեաց տոհմին, և զԱրտաւան իշխանն Վանանդայ, և զԿարէն իշխանն Ամատունեաց տոհմին, և զՎարազ իշխանն Դիմաքսենից» (Բուզ. Գ. ԺԴ.)։

Թէ Արտաշէս կամ Տրդատ, պսակեալն ի Ներոնէ, պսակեցաւ նաև ի Սմբատայ Բագրատունւոյ ըստ օրինակի թագաւորաց Հայոց՝ չէ ամենևին անհաւանական, մանաւանդ թէ կատարել այս կէսկրօնական արարողութիւնն, զոր Պարթևք ևս ունէին՝ էր հարկ, վաւերացունելու համար նոր թագաւորն յաչս ժողովրդեան. Հարկ էր և Արտաշիսի վարձատրել ըստ արժանւոյն զիւր բարեմիտ ծառայս։ Այս է նիւթ ԽԷ. գլխոյ Բ. դպրութեան Խորենացւոյն։

Յաջորդ գլխոյն մէջ (ԽԸ.) կը պատմէ Խորենացին, թէ ինչպէս Սմբատ հրամանաւ Արտաշիսի երթալով ի քաղաքն կռոց Բագարան՝ կ'սպանանէ զԵրուազ քրմապետ, զեղբայրն Երուանդայ, և կը կարգէ փոխանակ նորա մոգ.—«Զկնի այսորիկ հրաման տայ Սմբատայ երթալ յամուրն Բագարան, որ հուպ ի քաղաքն Երուանդայ ի վերայ Ախուրեան գետոյ, զի սպանցէ զԵրուազ եղբայր Երուանդայ։ Զոր կալեալ Սմբատայ՝ երկան զուլանէ հրամայէ կախել և ընկենուլ ի պտոյտ մի գետոյն։ Եւ ի տեղի նորա ի վերայ բագնացն կացուցանէ զընտանի Արտաշիսի, աշակերտ մոգի ուրումն երազահանի, որ յայն սակս մոգպաշտէ անուն կարդային։

Արտաշէս, ըստ Տակիտոսի, էր մոգ, ուստի հաւանական է թէ հաստատեց մոգութիւն փոխանակ կռապաշտութեան, զոր կ'ատէին Պարթևք, բայց Հայք ընդունած էին ազդեցութեամբ Յունաց առ առաջին Արշակունեօք (Տիգրան)։ Թէ Արտաշէս (Տրդատ) ջնջեց կռապաշտութիւնը՝ անտի յայտնի է մանաւանդ, որ Սմբատ ոչ միայն գերի առաւ Երուազայ ծառաներն, իմա մեհենին պաշտօնեաներն՝ այլ և կողոպտեց տարաւ մեհենին բոլոր հարստութիւնը.

—«Եւ ապա աւար առեալ (Սմբատ) զգանձսն Երուազայ և ծառայս անձինս հինգ հարիւր, նաև զընտիր գանձուցն մեհենից՝ բերէ Արտաշիսի։ Եւ Արտաշէս պարգևէ Սմբատայ զծառայսն Երուազայ, բայց զգանձսն հրամայէ տանել Դարեհի Պարսից արքայի, յաւելլով և ինքն ի գանձսն ի շնորհակալութեան պատիւ, իբրու հօր և օգնականի»։ Ուստի հակառակ է այսմ այն՝ զոր կը պատմէ յետոյ, թէ Արտաշէս յետ շինելոյ զԱրտաշատ, որ այրեալն և աւերեալ էր (ի Կորբուղոնէ)՝ «շինէ ի նմա մեհեան և փոխէ ի Բագարանէ զպատկերն Արտեմեայ (Անահտայ) և զամենայն կուռս հայրենիս», ա. հ.։ Ծառայքն Երուազայ, զորս կը յիշէ Խորենացին այնպէս բազում թուով՝ ոչ թէ սովորական սպասաւորներ էին, այլ հաւանականապէս հերատուկք (hiérodule), այսինքն արք և կանայք նուիրեալք մեհենից, զորս սովոր էին ունել ընդ ձեռամբ քրմապետք ըստ Ստրաբոնի։

«Յայնժամ Սմբատայ զծառայսն Երուազայ, զոր գերեացն ի Բագարանէ, տարեալ բնակեցուցանէ ի Թիկանց Մասեաց, ի նոյն անուն Բագարան կոչելով զձեռակերտն։ Ինքն անցանէ ի Պարսս ընծայատար Դարեհի, ոչինչ փոյթ առնելով զՀռոմայեցւոց իշխանութենէն»։ Կամի ասել՝ առանց նկատելու, թէ այն սերտ բարեկամութիւնն ընդ Պարթևս կարէր լինել անհաճոյ Հռոմայեցւոց. և կը թուի թէ եղաւ իսկ այնպէս. իսկոյն եկան հարկահանք և գունդ մեծ, զորս հազիւ կարաց ցածուցանել Արտաշէս.—«Իսկ ի գնալն Սմբատայ ի Պարսս՝ հասանեն հարկահանք կայսեր և սպայ ծանր ի սահմանս Հայոց. զորս մաղթեալ Արտաշիսի և կրկին տուեալ զհարկսն՝ հաշտեցուցանէ»։

Չիք տարակոյս, թէ Խորենացին չէ առանց աղբեր. միայն աղբիւրք նորա են շատ անգամ աննշան, և ինքն ևս երբեմն կամաւ կամ յանգէտս կ'ամոքէ պատմութիւնը։ Ի վախճանի ԼԶ. գլխոյն Խորենացին իմացուց, թէ Աբգարու և Սանատրկոյ պատմութեան համար իւր աղբիւրն էր Ղերուբնա.—«Ղերուբնա որդի Ափշադարայ դպրի գրեաց զամենայն գործս, որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ, և եդ ի դիւանին որ յԵդեսիա»։ Հոս կ'իմացունէ, թէ ի Սանատրկոյ և այսր, մանաւանդ Արտաշիսի պատմութեան համար, աղբիւրք իւր էին՝ մեհենական պատմութիւն Ողիւպ անուն քրմի մը Հանւոյ, Պարսից մատեանք և Հայոց երգն վիպասանաց։ Չենք գիտեր թէ ո՛վ էր Ողիւպ և ոչ՝ թէ ինչ էին մեհենական պատմութիւնքն զորս գրեց նա։ Մեհենական պատմութեամբք սա կը հասկցուի, թէ Ողիւպ լինելով քուրմ Հանւոյ՝ մեհենին դիւաններէն հանեց Հայոց պատմութիւն մը. բայց այսպիսի գործ ոչ ու-

րեք յիշուած է, և ոչ Խորենացին, յորոյ ձեռին կը գտնուէր այն պատմութիւն, ինչպէս կու տայ կարծել՝ տայ մեզ կատարեալ տեղեկութիւն գործին վրայ, այնպէս որ յիրաւի է տարակուսել թէ կար արդեամբ այնպիսի գրուած։ Նոյն բան է Պարսից մատեաններուն համար։ Հաւատարմագոյն աղբիւր Խորենացւոյն զԱրտաշիսէ ըստ մեզ է երգն վիպասանաց. այս միայն ծանօթ է մեզ, և այն ըստ մասին, այսինքն հատակոտորներէն, զորս կը գտնենք առ Խորենացւոյն և այլ ուրեք ուրեք։ Վիպասանք, այսինքն վիպասանութիւնք, էին Գողթնացի հայ երգչաց երգեր, գրո՞վ թէ անգիր՝ չէ յայտ, յորս կը պատմուէին գործք Արտաշիսի, և կային առ Խորենացւով, քանզի անդր կ'ուղարկէ նա զՄեկենաս իւր Սահակ, թէպէտ հատակոտորք որ առ մեզ հասած են՝ չեն կացուցաներ կատարեալ մարմին պատմութեան.—«Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ ի վիպասանացն որ պատմին ի Գողթան»։ Խորենացին կ'ըսէ համառօտիւ, թէ ինչ գործեր էին այնք—«շինել զքաղաքն, և խնամութիւն ընդ Ալանս և ծնունդք զարմիցն, և իբր տրփանք Սաթինկան ընդ վիշապազունսն՝ առասպելաբար, այ-ինքն ընդ զարմս Աժդահակայ, որ ունէին զամենայն զառ ստորոտովն Մասեաց, մարտ ընդ նոսա և քայքայումն յիշխանութենէն, և սպանումն նոցա և հրկիզութիւն շինուածոցն, և նախանձ որդւոցն Արտաշիսի և դրդռութիւն ընդ միմեանս ի ձեռն կանանցն։ Այս ամենայն, որպէս ասացաք՝ յայտնի են քեզ յերգս վիպասանացն»։ Ինչ որ է կամ կը թուի լինել Հայոց վիպասաններէն առնուած, իբրև պատմական և արժանի հաւատարմութեան՝ բերուած է մեր Պատմութեան պատմական մասին մէջ։

Խորենացւոյն ԾԴ. գլուխն է շփոթ։ «Աղմուկ շփոթից իմն լեալ յարևմուտս, ընդ որ վստահացեալ Արտաշէս՝ նշկահեալ ընդդիմանայ Հռոմայեցւոցն, ոչ տալով հարկս։ Իսկ Դոմետիանոսի կայսեր ցասուցեալ՝ զօրս ի վերայ Արտաշիսի առաքէ. որոց հասեալ ի կողմանս Կեսարու՝ զՏիրան և զզօրսն արևմտեան առաջի եդեալ ածեն տագնապաւ մինչև ցքաջ ընդարձակ հովիտն Բասենոյ. յորում ընդդէմ դիպեալ Արտաւազդ արևելեան և հիւսիսային զօրօքն, հանդերձ ամենայն որդւովքն արքայի, և պատերազմեալ սաստկապէս՝ վտանգին։ Յորոց ի վերջս պատերազմին հասեալ Սմբատ հարաւային զօրօքն, ընդ մէջ անցեալ ապրեցուցանէ զորդիսն արքայի, յաղթութիւն և զրաւ պատերազմին արարեալ։ Զի թէպէտև ծերագոյն էր՝ երիտասարդապէս յարդարեաց և մղեաց զճակատն, և հետամուտ եղեալ հալածեաց զզօրն Հռոմայեցւոց մինչև ի սահմանս Կեսարու։ Զայս կամելով երգել յառասպելսն՝ Դոմետ զոմն ասեն ե-

կեալ, որ է ինքն կայսրն Դոմետիանոս. ոչ եկեալ այսր, այլ զհրաման նորա և զզօրս այլաբանելով յանուն նորա կոչեն»։ Խորենացին կամ աղբիւր նորա, տեսնելով յերգս վիպասանաց «Դոմետ ումն եկեալ», և կարծելով զայն Դոմետ (որ է Դոմիտիոս Կորբուղոն զօրավար Ներոնի) զկայսրն Դոմիտիանոս՝ կը համարի զԱրտաշէս նըշկահեալ Դոմետիանու և պատերազմեալ ընդ Հռոմայեցիս, ա. հ.։ Բայց Արտաշէս, ուրոյն այն պատերազմներէն, զոր ունեցաւ ընդ Հռոմայեցիս ի սկզբան թագաւորութեան իւրոյ՝ չունեցաւ այլ պատերազմ այն ազգին հետ։ Խորենացին որ չգիտեր Տրդատ-Արտաշէսի երկար պատերազմներն առ Ներոնիւ, տեսնելով ևս զանունն Դոմետ՝ կը կարծէ թէ Արտաշէս ունեցաւ պատերազմ ընդ Դոմետիանոսի, մինչ չէ իսկ յայտնի թէ Արտաշէս կենդանի էր առ Դոմետիանոսիւ. ըստ հաւանականագոյն հաշուոյ՝ Արտաշէս կը թուի մանաւանդ մեռած Դոմետիանոսի առաջին տարին, կամ ամաւ միով յառաջ կամ յետոյ, այն է 80-ին կամ 81-ին։

Նոյն ԾԴ. գլխոյն վերջին մասին մէջ ևս շփոթ է պատմութիւն Խորենացւոյն։ «Բայց ըստ բախտին եղեալ Արտաշիսի՝ մեռանի ի նոյն ժամանակի Դոմետիանոս ի Հռոմ, և զկնի նորա Ներուաս ոչ աւելի թագաւորեալ քան զմի ամ։ Ընդ որս առաւել հպարտացեալ զօրացն Հայոց և Պարսից՝ ասպատակ ևս ի Յոյնս արարին»։ Խորենացին կը կարծէ, թէ յետ մահուն Դոմետիանոսի և միամեայ թագաւորութեանն Ներուասայ, Հայք Պարսից հետ միանալով յարձակեցան ի Յոյնս, ա. հ.։ Այսպիսի յարձակումն ի Հայոց, միաբանութեամբ Պարթևաց, եղած կը գտնենք ի ժամանակակից պատմութեան ո՛չ յետ մահուն Դոմետիանոսի (95) առ Արտաշիսիւ, այլ յետ մահուն Կոմոդոսի (195) առ Վաղարշիւ Դ. (191—208), որ մեր Վաղարշու հետ (195—210) յարձակեցաւ Հռոմայեցւոց վրայ. բայց Սեպտիմոս Սեւերոս (193—210) գալով յարևելս՝ վանեց զՊարթևս, և մեր Վաղարշ հաճեցոյց զնա ընծայիւք, տալով նաև պատանդս և զօր յօգնականութիւն։ Տես մասն Բ, գլ. ԽԲ, 9.

Նոյն շփոթութիւնը կը տևէ ԾԵ. գլխոյն մէջ։ Խորենացին կը դնէ զԱրտաշէս ոչ առ Դոմետիանոսիւ միայն (81—98), այլ և առ Տրայիանոսիւ (98—117)։ Գիտենք սակայն ի Դիոնէ, որ է գրեթէ ժամանակակից, թէ ինչպէս յառաջ քան զՏրայիանոս, առ Դոմետիանոսիւ, թերևս ի սկզբան իսկ կայսրութեան նորա (81), Արտաշէս մեռած էր, և կը թագաւորէր ի Հայս որդին Արտաշիսի Աշխադար (ըստ Խորենացւոյն՝ Տիրան), զոր Խո՛սրով արքայ Պարթևաց (107—121) մերժելով՝ դրած էր թագաւոր Հայոց զՊարթամասիր,

ոզդի եղբօր իւրոյ Բակրոյ. բայց Տրայիանոս կը պահանջէր ի Խոսրովայ՝ կոչել յետս զՊարթամասիր և թոյլ տալ Աշխադարայ երթալ յաթոռն, իսկ Խոսրով կ'ընդդիմանար, մինչև ի գալ Տրայիանոսի ի Հայս, կոչելով զՊարթամասիր, որ կը խնդրէր կայսրէն հաստատել զնա ի թագաւորութեան Հայոց՝ մերժեց զնա և յայտնեց նմա, թէ ունէր ի մտի բառնալ զթագաւորութիւնն Հայոց և առնել զՀայաստան նահանգ, ինչպէս ըրաւ իսկ։ Իսկ Պարթամասիր սպանուեցաւ ի պատերազմի ընդդէմ Հռոմայեցւոց։

Խորենացին այս ԾԵ. գլխոյն մէջ տարբեր կ'ընծայեցունէ պատմութիւնը։ Ըստ Խորենացւոյն՝ Արտաշէս կը թագաւորէ առկաւին առ Տրայիանոսիւ, և Պարթամասիրայ դէպքն, այսինքն գալն առ Տրայիանոս և մերժուիլն ի նմանէ և սպանումը՝ կ'ընծայուին Մաժանայ քրմապետի, որպէս թէ Մաժան գալով առ Տրայիանոս՝ կ'ամբաստանէ զեղբարս իւր զԱրտաւազդ և զՏիրան, յուսալով ինքն առնուլ սպարապետութիւնը, բայց մերժուելով կայսրէն՝ կ'սպանուի եղբայրներէն։

Ահա պատմութիւն Խորենացւոյն. «Զայսու ժամանակօք լինի թագաւորեալ Հռոմայեցւոց Տրայիանոս, և խաղաղացուցեալ զամենայն արևմուտս՝ դիմէ ի վերայ Եգիպտացւոց և Պաղեստինացւոց, և նուաճեալ զնոսա ընդ իւրով ձեռամբ՝ խաղայ յարևելս ի վերայ Պարսից։ Աստ աճապարեալ Արտաշէս մեծապէս ընծայիւք իջանէ ընդ առաջ նորա, և թողութիւն ի նմանէ գտեալ՝ դառնայ յաշխարհս Հայոց։ Եւ Տրայիանոս անցեալ ի Պարսս և զամենայն զկամս իւր կատարեալ՝ դառնայ ընդ Ասորիս։ Ընդ առաջ նորա իջանէ Մաժան, մատնութիւն զեղբարցն առնէր. Գիտեա, ասէ, արքայ, եթէ զԱրտաւազդ և զՏիրան վտարանդիս ոչ արասցես և զզօրսն Զարեհի ոչ հաւատասցես՝ հարկքն անաշխատ ի քեզ ոչ եկեսցեն։ Զայս արար Մաժան՝ քէն պահելով վասն Սմբատայ, զի և զնա նորա էր սնուցեալ. ընդ նմին և զՏիրան խորհեցաւ հանել, զի ինքն լիցի քրմապետ միանգամայն և սպարապետ արևմտից։ Զորմէ ոչինչ փոյթ արարեալ Տրայիանու՝ արձակէ ունայն։ Իսկ Արտաւազդայ և Տիրանայ իմացեալ զխորհուրդն նորա, դարան գործեալ յորս՝ սպանեն զՄաժան, զոր տարեալ թաղեցին ի Բագնացն աւանի իբր զքրմապետ։ Իսկ Արտաշէս յայնմհետէ անսայթաք հարկեաց Տրայիանու, և յետ նորա Ադրիանոսի կայսեր զամենայն աւուրս»։

Խորենացւոյն Կ. գլուխն ունի Արտաշիսի մահուան և յուղարկաւորութեան պատմութիւնը, զոր Խորենացին որպէս թէ կ'առնու Արիստոնէ Պեղղացւոյ, ոի էր մատենագիր առաջնոյ կիսոյ Բ. դարուն։ «Գեղեցիկ իմն—կ'ըսէ քերթողահայր մեր—պատմէ և Արիստոն

Փեղղացի (կարդա՝ Պեղղացի) յաղագս մահուանն Արտաշիսի։ Քանզի ի ժամանակի որպէս ապստամբեցին Հրեայք յԱդրիանոսէ Հռոմայեցւոց թագաւորէ և ետուն պատերազմ ընդ Ռուփոսի եպարքոսի, առաջնորդութեամբ առն ուրումն աւազակի, որոյ անունն էր Բարքօբայ (կարդա՝ Բարքօքեբաս), այսինքն աստեղ որդի, որ էր գործովք չարագործ և սպանող, բայց անուամբ իւրով մեծաբանեալ պարծէր, որպէս թէ յերկնից ծագեաց նոցա փրկիչ, իբր նեղելոց և գերեաց։ Եւ այնքան սաստկացոյց զմարտն՝ մինչև ի նա հայելով ի բաց կացին ի հարկելոյ Հռոմայեցւոց Ասորիք և Միջագետք և Պարսք ամենայն, քանզի էր և լուեալ, եթէ եմուտ յԱդրիանոս ախտ ուրկութեան։ Բայց մերն Արտաշէս ոչ երկմտեաց ի նմանէ։

Եւ եղև ընդ այն ժամանակս հասանել Ադրիանոսի ի Պաղեստինէ և սատակել զապստամբսն պաշարմամբ ի քաղաքի մի փոքր՝ հուպ յԵրուսաղէմ. վասնորոյ և ամենայն ազգին Հրէից հրամայեաց մերժել ի հայրենի աշխարհէն, որ և ոչ ի բազում հեռաստանէ հայեսցին յԵրուսաղէմ։ Եւ ինքն շինէր զԵրուսաղէմ զաւերեալն ի Վեսպիանոսէ և ի Տիտոսէ և յիւրմէ, և անուանեաց Եղիա յիւր անուն, որպէս և կայսրն իսկ Ադրիանոս՝ արեգակն։ Բնակեցոյց ի նմա հեթանոսս և քրիստոնեայս, որոց եպիսկոպոս էր Մարկոս ոմն։ Ընդ այն ժամանակս առաքեաց զօր ծանր զկողմամբք Ասորեստանեաց, և մերոյն Արտաշիսի հրամայեաց երթալ ի Պարսս հանդերձ իւրովք զիւգոստատօք (վերակացուօք չափուց և կշռոց, ըստ Գաթըրճեանի), զորոյ զհետ քարտուղարութեամբ լեալ այս այր, որ զայս պատմութիւն ետ մեզ, հանդիպի Արտաշիսի ի Մարս ի Սոհունդ անուանեալ տեղւոջ։

Պատմի և հիւանդանալ նմա ի Մարանդի, ի Բակուրակերտաւանի, և զԱբեղոյ զոմն նահապետ Աբեղենից տոհմին, զայր շոյտ և շողոմարար և սուտակասպաս ի նորին խնդրոյ արձակէ յԵկեղեաց յԵրիզա, ի մեհեանն Արտեմիդայ, խնդրել ի կռոցն բժշկութիւն և զբազում կեանս։ Որոյ ոչ ժամանեալ դառնալ՝ հասանէ վախճան Արտաշիսի։ Եւ գրէ, եթէ ո՛րչափ ամբոխութիւնք մեռան ի մահուանն Արտաշիսի, սիրելի կանայք և հարճք և մտերիմ ծառայք, և որպիսի՛ շուք բազմադիմիս արարին առ ի պատիւ դիոյն, քաղաքական կարգօք և ոչ որպէս զբարբարոսս։ Դագաղքն էին ոսկեղէնք, գահոյքն և անկողինքն բեհեզեայ, և պատմուճանն որ զմարմնովն՝ ոսկեթել. թագ կապեալ ի գլուխն, և զէնն ոսկւով առաջի եդեալ. և զգահոյիւքն շուրջ՝ որդիքն և բազմութիւն ազգականացն, և առ այսոքիւք պաշտօնէիցն զինուորութիւնք, և նահապետքն և նախարարութեանցն գունդք և միանգամայն զօրականացն վաշտք,

ամենեքին կազմեալ զինու հանդերձ, իբր թէ ի պատերազմ ճակատիցեն. և առաջի պղնձիս հարկանելով փողս, և զկնիսն ձայնարկու կուսանք սեւազգեստք և աշխարող կանայք, և զհետ բազմութիւն ռամկին։ Եւ այսպէս տարեալ թաղեցին։ Եւ շուրջ զգերեզմանաւն լինէին կամաւոր մահունք, որպէս վերագոյնն ասացաք։ Եւ սորա այսպէս սիրելի եղեալ աշխարհիս մերոյ, թագաւորեալ ամս քառասուն և մի»։

Այս գլխոյն մէջ, ինչպէս տեսնուեցաւ՝ Խորենացին կը պատմէ նախ Հրէից ապստամբութիւնն առ Ադրիանոսիւ առաջնորդութեամբ Բարքոքեբայ անուն Հրէին, և թէ ինչպէս Ադրիանոս նուաճելով զապստամբութիւնն՝ հանեց զՀրեայս Հրէաստանէ, արգելլով նոցա ի հեռուստ անգամ մօտենալ Երուսաղեմի, զոր վերստին շինելով բազմամարդացուց օտար գաղթականներով, և կոչեց յիւր անուն Եղիա։ Խորենացին իւր պատմութեան այս մասն առած է Եւսեբեայ Եկեղեցական պատմութեան հայերէն թարգմանութենէն հանդերձ սխալներովն։ Արդարև Եւսեբիոս կ'ըսէ, թէ Արիստոն Պեղղացի գրեց այն ապստամբութեան պատմութիւնը, զոր Խորենացին կ'առնու առանց յիշելու զԵւսեբիոս։ Բայց Խորենացին այն պատմութեան վրայ կը յաւելու ուրիշ պարագայ, որպէս զի գտնէ Արտաշիսի այն յուղարկաւորութեան փառաւոր պատմութեան ականատես վկայ։ Ըստ Խորենացւոյն՝ Ադրիանոս, յետ նուաճելոյ զՀրեայս՝ կը ղրկէ զօր ծանր յԱսորեստան, և մերոյն Արտաշիսի կը հրամայէ երթալ ի Պարսս մասնաւոր պաշտօնիւ։ Արիստոն Պեղղացի, որ կ'երթար այն արշաւանին հետ իբրև քարտուղար, հանդիպելով Արտաշիսի ի Մարս (կամի ասել Հայոց Մարք կոչուած գաւառը)՝ լինի ականատես մահուան նորա և յուղարկաւորութեան, և կը գրէ պատմութիւնը, որմէ, ինչպէս կու տայ կարծել՝ կ'առնու Խորենացին։

Թէ այնպիսի փառաւոր յուղարկաւորութիւն եղած է Արտաշիսի՝ չէ անհաւանական, նա՛ արժանի և վայել իսկ էր այնպիսւոյ թագաւորի. բայց թէ մահն Արտաշիսի (եթէ է նա Տրդատն Տակիտոսի, որպէս ամենայն պարագայք պատմութեան նորա, ես և ըստ Խորենացւոյն, կը միաբանին հաստատել), դիպեցաւ առ Ադրիանոսիւ, իբր 137-ին, և Արիստոն Պեղղացի եղաւ ականատես այն մահուան և յուղարկաւորութեան՝ այս հակառակ է պատմութեան, և Խորենացին կը գործէ հոս սխալ մեծ, մանաւանդ թէ կու տայ իսկ կասկածել իւր հաւատարմութենէն։ Տեսնենք թէ ո՛վ էր Արիստոն Պեղղացի, ո՛ր ժամանակի հեղինակ և ինչ գործեր ունէր։ Արիստոն Պեղղացի էր առ Ադրիանոսիւ յառաջնում կիսու Բ. դարուն, և

ունէր գրուած մի, «Պայքար Պապիսկեայ ընդ Յասոնի Հրէի»։ Զայս գործ նորա կը յիշեն Կեղսոս, Որոգինէս, Հերոնիմոս և այլք. բայց այս գրուածն էր աստուածաբանական։ Այլ ունէր նա թերևս ուրիշ գրուած պատմական, որմէ առած է Եւսեբիոս Հրէից ապստամբութեան պատմութիւնը. բայց թէ Արիստոն այն պատմական գրուածին մէջ կամ այլուր գրեց նաև Արտաշիսի մահն և յուղարկաւորութիւնը՝ հակառակ է այս պատմութեան, և չկարէ ընդունուիլ առանց բռնազբօսելու ժամանակագրութիւնը։ Դնելու համար զԱրտաշէս առ Ադրիանոսիւ՝ հարկ է տալ նմա իբր 80-ամեայ ժամանակ թագաւորութեան, այն է ի կայսրութենէն Ներոնի (55) մինչև ի պատերազմն Հրէից առ Ադրիանոսիւ (135)։ Եթէ ընդունինք ևս զհաշիւ Խորենացւոյն, որ կը դնէ զԱրտաշէս թագաւորեալ ի վերջին ամս Դոմետիանոսի, այն է իբր 80-ին՝ դարձեալ Արտաշէս լինի թագաւորեալ աւելի քան 55 տարի, մինչ ինքն իսկ Խորենացին կու տայ նմա թագաւորել 41 տարի։ Եթէ այս 41 տարին հաշուենք Ադրիանոսի արշաւանին տարիէն ի վեր (137 ըստ Խորենացւոյն)՝ Արտաշէս լինի թագաւորեալ ոչ առ Դոմետիանոսիւ, այլ առ Ներուասաւ, կամ ոչ 41, այլ 57 տարի, դարձեալ անհամաձայն պատմութեան Խորենացւոյն։ Զիարդ և իցէ՝ դնելն Խորենացւոյն զԱրտաշէս առ Ադրիանոսիւ և զԱրիստոն ոչ միայն պատմիչ, այլ և ականատես յուղարկաւորութեան նորա՝ է Խորենացւոյն պատմութեան առեղծուածներէն մին։

Ի պատմութեան յուղարկաւորութեան Արտաշիսի միւս ևս դժուարութիւն այն է, թէ «որդիք և բազմութիւն ազգականացն, պաշտօնէից զինուորութիւնք, նահապետք և նախարարութեանցն գունդք և միանգամայն զօրականացն վաշտք», այլև սիրելի կանայք և հարճք և մտերիմ ծառայք նորա գտնուեցան մօտ. միթէ բոլոր երկիրն և որքունիք և տէրութիւնն համօրէն թագաւորին հետ էին յայնմ հեռաւոր ճանապարհորդութեան։ Դարձեալ՝ Արտաշէս լինելով մոգ՝ չէ հաւանական թէ ղրկեց մարդ տէրութեան հարաւային արևելեան ծայրէն մինչև հիւսիսային արևմտեան ծայրն, յԵկեղեաց գաւառ, խնդրել բժշկութիւն ի կռոցն Անահտայ, որ զարշելի էր ըստ կրօնից մոգուցն։ Բայց թերևս մեր այս վերջին երկու առարկութիւնք չթուին այնպէս զօրաւոր։

Խորենացւոյն ԿԱ. գլուխն է զԱրտաւազդայ։ Արտաւազդ չյիշուիր յարտաքին պատմութեան, սակայն հաւանական է թէ յաջորդեց հօրն սակաւ ժամանակ, թերևս աւուրս ինչ միայն։ Ըստ Խորենացւոյն՝ Արտաւազդ երթալով յորս զտկամբ Գինայ (որ կը թուի լինել Երասխայ կամ Մեծամօրայ հիւսիսային վտակներէն մին),

խելագարեցաւ, և յածելով այսր անդր երիվարաւն մոլեգնաբար՝ անկաւ ի խոր վիհ և եղաւ անհետ.—«Յետ Արտաշիսի թագաւորէ Արտաւազդ որդի նորա։... Յետ սակաւ ինչ աւուրց թագաւորելոյն իւրոյ անցեալ զկամրջաւն Արտաշատ քաղաքի, որսալ կինճս և իշավայրիս զակամբ Գինայ՝ աղմկեալ իմն ի ցնորից խելագարանաց, ընդ վայր յածելով երիվարաւն՝ անկանի ի խոր իմն մեծ, և խորասոյզ լեալ անհետի»։ Քան այսպէս խելագարելով վիհ մը իյնալ և անհետանալն՝ աւելի բնական կը թուի մեզ և աւելի մօտ վիպասանաց առասպելին, թէ որովհետև վայրագ և բուռն էր Արտաւազդ, երթալով յորս Մասեաց կողմերն՝ սպանուեցաւ, թերևս թելադրութեամբ եղբարցն, և ելաւ համբաւ, թէ քաջք, այսինքն դևք ըստ սնապաշտ կարծեաց Հայոց, կալան զնա և կը պահէին։ Ձիարդ և իցէ բուն մահը՝ այս կարծեաց վրայ հիմնուած է ռամկական առասպելն, զոր կը յիշէ Եզնիկ, և աւելի մանր՝ Խորենացին։ Այս գլխոյն մէջ Խորենացին կը յաւելու նաև վիպասանաց գեղեցիկ հատակտորներէն մին, ուր Արտաշիսի անէծից կ՚ընծայուի Արտաւազդայ կորուստը։ Մենք արդէն բերինք այս գլուխն իբրև պատմական, թէպէտ պաճուճեալ ազգային վիպասանական և ժողովրդական քողով։

Խորենացին (Գլ. ԿԶ.) իւր պատմութեան յԱրտաւազդէ մինչև Խոսրով՝ աղբիւր կը ցուցնէ Բարդածան ոմն՝ ասորի աղանդաւոր, հետևող Կնոստիկեանց վարդապետութեան։ Սա որպէս թէ գալով ի Հայս, աշակերտելու համար «խուժ» Հայերն, և չընդունուելով կ՚երթայ յԱնի, և կարդալով Հայոց մեհենական պատմութիւնը՝ կը հանէ մեր թագաւորներուն գործերն, յաւելլով զգործս իւրոյ ժամանակին, և կը թարգմանէ ասորերէն, որ ապա կը թարգմանուի յունարէն.—«Զրուցէ մեզ զայս Բարդածան որ յԵդեսիայ. քանզի նա յաւուրս Անտոնինոսի վերջնոյ երևեցաւ պատմագրող։ Որ յառաջ աշակերտեալ էր աղանդին Վաղենտիանոսի, զոր յետոյ անարգեալ յանդիմանեաց, ոչ գալով ի ճշմարտութիւն, այլ միայն ի նմանէ զատուցեալ՝ այլ հերձուած յարդարեաց յինքենէ։ Սակայն զպատմութիւնս ոչ ստեաց, զի էր այր կորովի բանիւք. որ և առ Անտոնինոս գրեաց թուղթ, և բազում ասացուածս արար ընդդէմ աղանդոյն Մարկիոնացւոց և բաշխից և կռոց պաշտաման զոր ի մերում աշխարհիս։ Վասն զի եկն նա այսր, որպէս զի աշակերտել զոք կարասցէ ի խուժ հեթանոսացս, և իբրև ոչ ընկալեալ եղև՝ եմուտ նա յամուրն յԱնի, և ընթերցեալ զմեհենական պատմութիւնն, յորում և զգործս թագաւորացն, յաւելլով իւր և որ ինչ առ իւրեաւն, և փոխեաց զամենայն ի լեզու ասորի, որ և ապա

անտի լեզուէ ի յոյն բան:... Ցայսմ պատմութենէ առեալ մեր երկրորդեցաք քեզ ի Թագաւորութենէն Արտաւազդայ մինչև յարձանն Խոսրովու»:

Խորենացին Արտաշիսի պատմութեան համար ըսած էր սակաւ մի յառաջ, թէ Ողիւպ քուրմ Հանւոյ հանեց Անւոյ մեհենին դիւաններէն Արտաշիսի պատմութիւնը, «և զայլ բազում գործս զոր ասել կայ մեզ առաջի»: Միթէ այն բազում գործոց մէջ չկայի՞ն նաև Արտաշիսի որդւոց, Տիրանայ և Տիգրանայ, մանաւանդ Արտաւազդայ գործերն, որ այնպէս մօտ յարաբերութիւն ունէին Արտաշիսի պատմութեան հետ: Բայց ընդունինք թէ Ողիւպ հանած չէր Արտաշիսի և նորա ժամանակին պատմութիւնն ամբողջ, ուստի և հարկ եղաւ ասորւոյն Բարդածանայ մտնել Անւոյ դիւաններն և հանել զպատմութիւն Արտաւազդայ և եղբարց նորա: Միայն կը հարցունենք. Անւոյ դիւանին պատմութիւններն հարկաւ էին հայերէն. քանզի կ'ըսէ թէ Բարդածան փոխեց զայնս յասորի լեզու, և անկէ թարգմանուեցան յունարէն: Բարդածան գիտէր ուրեմն հայերէն: Ընդունինք թէ գիտէր: Ի՞նչ գրով գրուած էին այն պատմութիւնք, մինչ Հայք չունէին գիր նոյն իսկ ըստ պատմութեան Խորենացւոյն, որ կ'ըսէ թէ յառաջ քան զՄեսրոպ չկար հայերէն գիր: Եթէ ըսուի, թէ Հայք յառաջ քան զՄեսրոպ կը գրէին յունարէն կամ պարսկերէն տառերով՝ այս չլուծեր դժուարութիւնը. քանզի եթէ մեհենական պատմութիւնք կրնային գրուիլ յունարէն կամ պարսկերէն տառերով, ի՞նչ հարկ կար Մեսրոպայ գիր հնարել: Կը մնայ միայն ըսել, թէ այն պատմութիւնք գրուած էին պարսիկ լեզուաւ:

Խորենացին կամի հաւատացուցանել մեզ թէ Բարդածան, թէպէտև էր հերձուածող՝ «սակայն զպատմութիւնս ոչ ստեաց, զի էր այր կորովի բանիւք»: Ընդունինք թէ Բարդածան էր ճշմարտախօս, բայց չենք կրնար ընդունել թէ էր «պատմագրող»: Պատմութիւնն գիտէ զնա անուանի Գնոստիկեան, որ գրեց զբաշխից և ըղբախտից, այսինքն ճակատագրի վրայ. այսպէս գիտեն զնա Եւսեբիոս, Եպիփան, Հերոնիմոս, Եփրեմ և այլք. բայց չիք ուրեք յիշուած թէ էր նա նաև պատմագրող. և ոչ կը գտնենք բաւական պատճառ ի հաստատութիւն վկայութեան Խորենացւոյն, թէ Բարդածան եկաւ ի Հայս «աշակերտել զոք ի խուժ հեթանոսացս», և չեղև ընկալեալ. և եթէ չեղև ընկալեալ, ինչպէս գտաւ մուտ ի դիւանն մեհենին Անւոյ և ի՞նչ շահ ունէր հանել այն դիւանէն քանի մը հայ թագաւորաց պատմութիւնը: Այն ևս խնդիր է, թէ ընաւ կա՞ր յԱնի որևիցէ լեզուաւ մեհենական պատմութիւն, այս-

ինքն տարեգիր, զոր կը գրէին քուրմք մեհենին։ Խորենացին այսպիսի մեհենական պատմութեան գոյութեան վրայ չտար մեզ ուրիշ վաւերական վկայութիւն՝ բաց իւր երկու կարծեցեալ աղբիւրներէն, զորս որպէս թէ Ողիւպ ոմն քուրմ, և ապա Բարդածան ասորի հանեցին այն մեհենին դիւաններէն։

Բայց կայ նաև ուրիշ կարևոր պատճառ, որ չթողուր մեզ հաւատալ, թէ Բարդածան այն քանի մը գլուխներն, Արտաւազդայ, Տիրանայ, Տիգրանայ, Վաղարշու և Խոսրովայ վրայ, հանեց Անւոյ մեհենական պատմութենէն։ Եթէ արդարև կար ճշմարիտ մեհենական պատմութիւն յԱնի, և Բարդածան տեսաւ զայն՝ պիտի տեսնէր հոն, յԱրտաւազդայ մինչև Խոսրով, ի նախորդն մեծին Տրդատայ ըստ Խորենացւոյն, այսինքն մինչև 226, ոչ թէ չորս, այլ եօթն թագաւոր, զորս գիտէ արտաքին պատմութիւնն մեծաւ մասամբ ժամանակակից, և որոց պատմութիւնն ունի սերտիւ աղերս ընդ պատմութեան Հռոմայեցւոց (Տրայիանոսի, Ադրիանոսի, Անտոնինոսի Պիոսի, Ղուկիոսի Վերոսի, Կոմոդոսի, Սեպտիմոսի Սևերոսի, Կարակալլայի, Մակրինոսի, Աղեքսանդրի Սևերոսի) և Պարթևաց (Վաղարշու Ա, Բակրոյ, Խոսրովու և Վաղարշու Բ, Գ. և Դ.), զորոց գրեցին նշանաւոր պատմիչք ժամանակակիցք և իբր ժամանակակիցք, Դիոն Կասսիոս, Հերովդիանոս, Եւտրոպիոս, Սեքստոս Ռուփոս, Սպարտիանոս, Յուլիոս Կապիտոլինոս, Ղուկիանոս։

Խորենացին ԿԱ. գլխոյն վերջը յարելով—«Եւ առնու զթագաւորութիւնն Տիրան եղբայր նորա»՝ կ'սկսի զգլուխն ԿԲ. այսպէս. «Թագաւորէ Հայոց Տիրան որդի Արտաշիսի յերրորդ ամի Պերոզի առաջնոյ, Պարսից արքայի»։ Խորենացւոյն Պերոզն է Վաղարշ Գ, յաղթողն Հռոմայեցւոց, ինչպէս յայտնի է ԿԴ. գլխէն—«Պերոզ արքայ Պարսից ի Հռոմայեցւոց իշխանութիւնն արշաւեաց, ուստի և Պերոզ անուանեցաւ, որ է յաղթող, քանզի յառաջ անուանիւր Վաղեգեսոս (Վաղարշ) ի Յունաց լեզուն»։ Արդ այս Վաղարշ, ըստ ստոյգ ժամանակագրութեան Պարթև թագաւորաց՝ է 149—191. ապա Տիրան, ըստ Խորենացւոյն, թագաւորեց 152-ին, այն է երրորդ տարին Վաղարշու։ Եթէ, ըստ Խորենացւոյն, Արտաշէս մեռաւ իբր 137-ին, Հրէից պատերազմէն սակաւ մի յետոյ առ Ադրիանոսիւ, ինչպէս տեսանք, և Տիրան (որ է գրեթէ անմիջական յաջորդ նորա, քանզի Արտաւազդ մեռաւ «յետ սակաւ ինչ աւուրց թագաւորելոյն իւրոյ») թագաւորեց Վաղարշու երրորդ տարին՝ ապա թագաւորած է աւելի քան 15 ամօք յետոյ քան զԱրտաշէս, և ոչ իսկ և իսկ զկնի նորա։ Չկրնար ըսուիլ, թէ Վաղարշու թուականն է սխալ, քանզի նոյն Խորենացին զՎաղարշ կը դնէ Մարկոս

Աւրելիոսի և Ղուկիոս Վերոսի ժամանակ (161—180). բայց գիտենք արտաքին պատմութենէ, թէ Տիրան (կամ Աշխադար՝ ըստ արտաքին ժամանակակից պատմութեան) թագաւորեց Դոմետիանոսի առաջին կամ երկրորդ տարին (81 կամ 82) մինչև 107 կամ 108, այն է առաջին կամ երկրորդ տարին Պարթևաց թագաւորին Խոսրովու (107—121), որ ընկէց զնա աթոռէն։ և դրաւ զիւր եղբօրորդին զՊարթամասիր, որոյ պատճառաւ գժտեցաւ ընդ Տրայիանոսի, ինչպէս արդէն տեսանք։ Բայց Խորենացւոյն ժամանակագրութեան սխալներն մի առ մի ցուցնել աւելորդ աշխատութիւն է. սաչափ միայն բաւական է ըսել, թէ Խորենացւոյն ոչ միայն ժամանակագրութիւնն, այլ և յաջորդութիւնը, զոր կու տայ Հայ թագաւորաց Արտաւազդէ մինչև Խոսրով՝ են կրճատ, խառնակ և բոլորովին տարբեր արտաքին ժամանակակից պատմութենէ։ Թողլով զայս ամենայն՝ գանք ի պատմութիւն Տիրանայ և յաջորդաց նորա։

Ըստ Խորենացւոյն՝ Տիրան էր յոյլ, զբօսասէր.—«Սորա ոչինչ պատմին գործք մեծամեծք, այլ միայն թէ մտերմութեամբ ծառայեաց Հռոմայեցւոց. եկաց խաղաղութեամբ, որսոց և զբօսանաց պարապեալ, որպէս ասեն։ Այս բանք «որպէս ասեն»՝ կը ցուցնեն, թէ աղբիւր Խորենացւոյն էր ոչ թէ մեհենական պատմութենէ հանուած, այլ հասարակաց զրոյցներու կամ երգերու հաւաքածոյ մը պարսիկ կամ ասորի լեզուաւ, զոր ունէր Խորենացին ի ձեռին։

Զարմանալի է, որ Խորենացին աւելի քան քսան տարի թագաւորող Տիրանայ գործերէն ուրիշ բան չգտներ պատմելու արժանի՝ բայց միայն թէ Տիրան ունէր երկու ձի, զարմանալի արագ.—«Ձիոց երկուց լեալ (սորա), թեթև առաւել քան զՊեգասոս, երագութեամբ անբաւ, զորս ոչ երկրակոխս, այլ օդագնացս համարէին, յոր խնդրեալ հեծանել Տատաքէի ուրումն իշխանի Բզնունեաց՝ պարծէր ընչեղագոյն գոլ քան զարքայ»։ Միւս ևս գործ Տիրանայ յիշեալ ի Խորենացւոյն՝ էր տալ նորա Արշակունեաց բնակելոց ի Հաշտեանս, որոց նեղ կու գար այն գաւառն՝ Աղիովտի և Առբերանոյ գաւառներն. - «Եկեալ առ նա կանխագոյն իւրոյ ազգին Արշակունեաց որ էին ի կողմանս Հաշտենից՝ ասեն. Ընդարձակեա մեզ զժառանգութիւնս, զի նեղ է, քանզի բազմացաք. և նա հրամայէ ոմանց ի նոցանէ երթալ ի գաւառն Աղիովտի և Առբերանոյ»։

Տիրանայ յուլութեան և թուլութեան իբրև նշան կը թուի յաւելուլ Խորենացին զառանձնանալն նորա Եկեղեաց գաւառին Զրմէս աւանը, թողլով կառավարութեան հոգն իւր սիրելիներէն Ծրախնաւու անուն Անձևացի պատանւոյ մը, զոր կը գովէ Խորե-

նացին, իբրև ընտիր և համեստ և ի ցանկութիւնս մարմնոյ օրինաւոր, թողլով նմա զմին ի կանանց, զինչս և զերկրորդութեան պատիւն, զոր ունէր Արտաւազդ, մեռեալն անորդի, և օգնական՝ Դրուասպ ոմն պարսիկ, խնամի Նախարարաց Վասպուրականի, որում և պարգևած էր գեղեր և ագարակներ.—«Յաւուրս սորա ասեն լեալ զպատանի ոմն յազգէն Անձևացեաց, սէգ յամենայնի, Երախնաւու անուն կոչեցեալ. որ առնէ կին զվերջին կանանցն Արտաւազդայ զոր ի Յունաց էր ածեալ: Եւ քանզի զաւակ ոչ գոյր Արտաւազդայ՝ արքայ թողու յԵրախնաւու զամենայն տունն Արտաւազդայ: Զի ասէին զնա այր ընտիր լինել և համեստ յամենայնի, այլ և ի ցանկութիւն մարմնոյ իբրև զօրինաւոր ոք: Զոր սիրեալ արքայի՝ տայ նմա զգահն երկրորդական զոր ունէրն Արտամաւզդ, և զհօգս արևելեան զօրուն ի նա հաւատացեալ՝ առ նմա թողու զԴրուասպ ոմն պարսիկ զմտերիմ իւր, որ խնամացեալ էր ընդ նախարարսն Վասպուրականի, որում տուեալ էր զաւանն Տատեոնս հանդերձ ագարակօքն, և զայգին մեծ յոր մտանէր առուն՝ գետ հանեալ ի ծովէն Գայլատուայ»: Արդարև մեհենական տարեգիրները հանուած պատմութեան համար չնչին դէպք: Ի վախճանի կը դնէ Խորենացին զօրինակ մահուն Տիրանայ, թէ «մեռաւ ի ճանապարհի, ձեան հիւսիսոյ կալեալ»:

Չիք տարակոյս, թէ այս ընտանեկան դիպուածք, ուր քաղաքական յարաբերութեանց յիշատակութիւն ամենևին չկայ՝ առնուած են երգերէ, ինչպէս նաև երգէ առնուած է ԿԳ. գլխոյն պատմութիւնն զՏրդատայ ումեմնէ Բագրատունւոյ, զոր կը բերէ Խորենացին, ինչպէս հաւանական է՝ ի շնորհս Բագրատունեաց, որոց այնպէս բարեկամ է, ապա թէ ոչ՝ չունէր քաղաքական պատմութեան մէջ ամենևին տեղի, որպէս ինքն իսկ Խորենացին կը խոստովանի— «Զայս աւելորդ եղև պատմել մեզ զնահատակութիւն առնն ցանկասիրի».—«Տրդատ ոմն անուն յազգէն Բագրատունեաց, որդի Սմբատուհեայ դստեր քաջին Սմբատայ, այր սրտեայ և ուժեղ, կարճ հասակաւ և գծուծ տեսլեամբ, զոր իւր փեսայացոյց արքայ Տիրան ի դուստր իւր յԵրանեակ. որ ատեցեալ զայր իւր զՏրդատ՝ պչրանօք և պռստելեաւ կայր զօրհանապազ, աւաղելով զինքն, իբր թէ չքնաղագեղ ընդ վատակերպոյ, և քաջատոհմիկ ընդ վատթարազգւոյ բնակէ: Ընդ որ զայրացեալ Տրդատ՝ յաւուր միում գանէ զնա սաստկապէս, և կտրեալ զգեղձան հերսն և զվարսիցն փետեալ զխոպոպիս՝ հրամայէ քարշել արտաքս և ընկենուլ ի սենեկէն: Եւ ինքն գնաց ապստամբեալ ի կողմանս ամրութեանն Մարաց. և հասեալ ի Սիւնեաց աշխարհն՝ ժամանէ նմա

Համբաւ մահուանն Տիրանայ. զոր լուեալ դադարէ անդ։ Եւ եղեւ յաւուր միում կոչել զնա յընթրիս Բակրոյ նահապետին Սիւնեաց, և յուրախանալն գինւով՝ տեսեալ Տրդատայ զկին մի, զի յոյժ գեղեցիկ էր և երգէր ձեռամբ, որում անուն էր Նազինիկ՝ տռփացաւ, և ասէ ցԲակուր. Տուր ինձ զվարձակս զայս. և նա ասէ. Ոչ տամ, զի հարճ իմ է։ Իսկ Տրդատայ բուռն հարեալ ի կինն՝ յիւրն քարշեաց ի բազմականն. շամշելով վաւաշէր ըստ օրինակի երիտասարդի անարգել տարփաւորի։ Ընդ որ խանդացեալ Բակրոյ՝ յարեաւ հանել զնա ի նմանէ։ Բայց յոտն կացեալ Տրդատայ, ծաղկակալ սկտեղբն իբր զինու վարեցաւ, նաև զբարձակիցսն ի բազմականացն ի բաց պուղեաց»։ Խորենացին յաւելլով իւր կողմանէ—«Եւ անդ էր տեսանել նոր զոմն Ոդիսևս զՊենելոպայ զսեղեխն սատակելով, և կամ զՂապիթեայցն և զյուշկապարկացն կռիւս ի վերայ Պերիթեայ հարսանեացն»՝—կը ցուցնէ թէ արդարև չէր անհմուտ քերթողահայրն մեր հելլենական դպրութեան բոլոր ճիւղերուն։ Յետ կռուին, ասէ Խորենացին, «յիւր վանսն եկեալ, խոյս ի ձի ելեալ հանդերձ հարճիւն՝ ի Սպեր գնաց»։ Որովհետև Տրդատ չէր անուն Բագրատունեաց, զորս ծագմամբ հրեայ կը համարէր Խորենացին՝ կը յաւելու. «Բայց գիտեա, զի ի թողուլ ազգին Բագրատունեաց զօրէնս հարցն՝ նախ խժական ժառանգեցին յորջորջումն, Բիւրատ և Սմբատ և այլ այսպիսի կոչմունս, զրկեալ ի նախնական անուանցն, որպէս կոչէին յառաջ քան զուրանալն—Բագադիա, Տուբիա, Սենեքիա, Ասուդ, Սափատիա, Վազարիա, Ենանոս։ Եւ ինձ թուի. թէ որ այժմդ կոչին Բագրատունիք Բագարատ՝ Բագադիա է դա, և Ասուդ՝ Աշոտ. դոյնպէս և Վազարիա՝ Վարազ, որպէս Շամբատ՝ Սմբատ»։ Այլ զայսմանէ տես յառաջնում մասին մերում։

ԿԲ. գլխով Խորենացին կ'անցնի ի պատմութիւն Տիգրանայ, իբրև յաջորդի և եղբօր Տիրանայ, և կ'անուանէ զնա վերջին.—«Փոխանորդէ զՏիրան եղբայր նորա Տիգրան վերջին. թագաւորեալ Հայոց ի քսան և չորրորդի ամի Պերոզի արքայի, և երկայնակեաց եղեալ ամս քառասուն և երկու՝ մեռանի»։ Յայտնի է թէ «երկայնակեաց» ըսուած է ոչ թէ կենաց, այլ թագաւորութեան ժամանակին համար։ «Ոչինչ գործ—կը յաւելու Խորենացին—արժանի յիշատակի ցուցեալ, այլ յաղջկանէ միոջէ ի յունէ ի կալանս ըմբռնեալ ի ժամանակին՝ յորում վախճանեցաւ Տիտոս երկրորդ թագաւոր Հռոմայեցւոց որ անուանեցաւ Անտոնինոս Աւգոստոս», ակնարկելով զԱնտոնինոս Պիոս, որ մեռաւ 161-ին։ Զնոյն պատմութիւն կը կրկնէ ստորև նոր պարագաներով, այսինքն թէ յարշա-

ւանս Վաղարշու Գ-ի Հռոմայեցւոց վրայ (161), հրամանաւ նորա Տիգրան յարձակելով ի Միջագետս՝ կը բռնուի կնոջէ մը որ այն կողմերուն կ'իշխէր։ Բայց Ղուկիոս Վերոս գալով ի Միջագետս՝ կ'ազատէ զՏիգրան, տալով նմա իւր ազգականներէն կին Ռոփի անուն, զոր թողուց նա, կ'ըսէ, երբ դարձաւ ի Հայս. բայց չորս պատանիներն, զորս ունեցաւ ի Ռոփեայ՝ ըրաւ ուրոյն ցեղ Ռոփսեան անուամբ.—«Յասպատակելն Պերոզի ընդ Ասորիս ի կողմանս Պաղեստինացւոց՝ վասն նորա և հրամանաւ նորին և մերն Տիգրան ի Միջերկրեայս. և ի կալանս ըմբռնեալ յաղջկանէ միոջէ իշխելոյ կողմանցն այնոցիկ, մինչդեռ Ղուկիանոս կեսար յԱթէնս զմեհեանն շինէր. որոյ և անցեալ զօրօք բազմօք ի Միջերկրեայսն յետ մեռանելոյն Պերոզի նուաճեաց զՀայս, և արձակեաց զՏիգրան։ Ետ զՌոփի զկոյս զմերձաւոր իւր նմա կնութեան, զոր եկեալ ի Հայս ի բաց թողու, և ի նմանէ լեալ պատանիս չորս՝ ազգ սերէ յանուն մօրն իւրեանց Ռոփեայ՝ Ռոփսեան. և զառաջին մանկանցն գլուխ նահապետ կացուցանէ և կարգէ ընդ այլ նախարարութիւնս, զի մի անուանեսցին Արշակունիք»։

Թողլով այս պատմութեան ժամանակագրութեան անտեղութիւնը—(քանզի եթէ Տիգրան թագաւորեց Վաղարշու քսաներորդ չորրորդ տարին, որ կը հանդիպի 173-ին, ինչպէս կրնար ազատել զնա Ղուկիոս որ մեռած էր 169-ին, իբր չորս տարի առաջ) գանք պատմական անտեղութեան։ Եթէ Տիգրան հրամանաւ Վաղարշու, այսինքն իբրև օգնական նմա, մտաւ ի Միջագետս՝ էր թշնամի Հռոմայեցւոց, և Ղուկիոս չէր արձակեր զնա և հաստատէր յաթոռն, նաև կին ևս տար նմա իւր ազգականներէն։ Բոլորովին տարբեր կը պատմէ, ինչպէս արդէն տեսանք՝ արտաքին պատմութիւնն, որ ոչ միայն ժամանակակից է, այլ և բանաւոր։ Ի յարձակել Վաղարշու ի Միջագետս (161)՝ կը ղրկէ զզօրավար իւր Խոսրով ի Հայս։ Սոյեմոս, որ է Տիգրան, ինչպէս յայտնի է պատմութեան պարագաներէն՝ ոչ թէ օգնական է Վաղարշու, այլ կը խնդրէ օգնութիւն Հռոմայեցիներէն, բայց չկրնալով զդէմ ունել Խոսրովու՝ խոյս կու տայ ի Հռոմ, ուր կ'առնու սինկղիտոսութեան պատիւ, թերևս նաև կին կայսերական տոհմէ, և յետ վանելոյ Պարթևաց Հայաստանէ՝ կը հաստատուի յաթոռ իւր։ Տես մեր Պատմութեան երկրորդ մասին մէջ։

Կայ արդարև հայ թագաւոր բանտարկեալ, որ և, ինչպէս տեսանք մեր պատմական մասին մէջ՝ մեռած է ի բանտի, այն է Վաղարշ, զորոյ պատմութիւնն, ինչպէս կը տեսնուի՝ կը խառնէ

Խորենացին կամ աղբիւր նորա ընդ պատմութեան Տիգրանայ, ինչպէս պիտի տեսնենք ի ստորև։

Խորենացին ի վախճանի ԿԶ. գլխոյն կը յիշէ կարեւոր ինչ կէտ, որ վերաբերութիւն ունի Հայոց հին կրօնից։ Կան ակնարկութիւններ ի հին պատմագիրս մեր, առ Բուզանդայ, Ագաթանգեղոսի և Խորենացւոյն, թէ Հայոց հնագոյն կրօնքն էր գրադաշտական, այսինքն պաշտօն կրակի, որ կը վառէր բագիններու վրայ անշէջ։ Այս պաշտաման գլխաւոր տեղիք էին ի վաղուց Բագաւան, քաղաք ի Բագրեւանդ, յարեւելեան մասին Հայոց, և յարեւմտեան մասին, ի Դերջան՝ Բագայառիճ, որ ըստ Ագաթանգեղոսի՝ պարթեւական լեզուաւ ունէր զնոյն նշանակութիւն, այսինքն Դիցաւան, ուր և կար «Միհրական մեհեան», նուիրեալ Հեփեստեայ, այսինքն կրակի։ Ըստ Խորենացւոյն՝ Արտաւազդ և Տիգրան որդի Արտաշիսի, յետ սպանանելոյ զեղբայր իւրեանց զՄաժան քրմապետ՝ թաղեցին զնա ի Բագաւան, իբրև նուիրական քաղաք Որմզդի, այսինքն Արամազդայ, որոյ պաշտօնեայ էր Մաժան։ Զինչ և իցեն հանգամանք անձին և մահուան Մաժանայ՝ հաւանական կը թուի թէ Մաժան ոմն քրմապետ թաղուած էր ի Բագաւան։ Յետոյ, ասէ Խորենացին, Տիգրան Բ. իւր եղբօր գերեզմանին վրայ կանգնեց բագին, պատուիրելով որ զոհերէն վայելէին անցաւորք, և օտարք ընդունէին հիւրընկալութեամբ.—«Վերջին Տիգրանայ արքայի Հայոց պատուեալ զգերեզման եղբօր իւրոյ Մաժանայ քրմապետի ի Բագնացն աւանի որ ի Բագրեւանդ գաւառի, բագին ի վերայ գերեզմանին շինեալ, զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, և ընդունիցին հիւրք երեկօթիւք»։ Ի բանից Խորենացւոյն յայտնի է, թէ ոչ թէ Տիգրան հաստատեց զԲագաւան իբրև տեղի պաշտաման որմզդական հրոյ, այլ կար անդէն ի վաղուց իբրև նուիրական քաղաք։ Արտաշիր Սասանեան, ըստ Խորենացւոյն, յետ նուաճելոյ զՀայս՝ «զհուրն որմզդական ի վերայ բագնին որ ի Բագաւան՝ անշէջ հրամայեաց լուցանել»։ Յայտնի է թէ ինչպէս քաղաքն՝ նոյնպէս պաշտօնն վաղուց սովորական էր հոն, և Արտաշիր (կամ այլ ոք ի Սասանեանց, քանզի Արտաշիր մտած չէ ի Հայս) «առաւել ևս յորդորէ»։ Նոյնպէս հին էր հոն օտարներ հիւրընկալելու սովորութիւնն ի պատիւ Որմզդի կամ Արամազդայ, որ ըստ Յունաց ևս համարուած էր վանատուր, հիւրընկալ։ Խորենացին կը յաւելու, թէ յաջորդն Տիգրանայ, Վաղարշ, կարգեց հոն «տօն աշխարհախումբ ի սկզբան ամին նորոյ, ի մուտն նաւասարդի»։ Սակայն հաւանական է, թէ այս աշխարհախումբ տօն ևս կից էր այն պաշտաման և այնչափ հին՝ որչափ պաշտօնն։

Ագաթանգեղոս յիշելով զԲագաւան՝ կը ցուցնէ թէ պաշտօնն էր ի պատիւ Արամազդայ ոչ միայն իբրեւ Հիւրընկալ վանատուր դից, այլեւ իբրեւ դից Նոր բերոց. տալով Արամազդայ նաեւ զանունն Ամանոր՝ կու տայ ակնարկել թէ տօնն ևս, իբրեւ Համաշխարհի տօն՝ էր այնպէս հին, ինչպէս պաշտօնն, և Լուսաւորիչ փոխեց զայն ի տօն Յովհաննու Մկրտչի, յորոյ ի յիշատակ կը կատարուէր հոն ամէն տարի աշխարհաժողով տօն.—«Զյիշատակս վկայիցն բերելոց ժամադրեաց տօն մեծ հռչակել, *յառաջագոյն* կարծեալ սնոտեացն պաշտաման՝ ի ժամանակի դիցն Ամանորայ ամենաբեր Նորոց պտղոց տօնից, Հիւրընկալ դիցն Վանատրի, զոր *յառաջագոյն իսկ ի նմին տեղւոջ պաշտէին՝* յուրախութեան Նաւասարդ աւուր» (Ագ. ՇԺԹ)։ Բուզանդ (Դ. ԺԵ.) առանց յիշելոյ հեթանոսական պաշտօնը՝ կ'իմացունէ թէ Բագաւան էր տեղի աշխարհաժողով տօնի.—«Յայնմ աւուր տօն դիպեցաւ յիշատակի մեծին Յովհաննու, որ ի Գրիգորէ և ի Տրդատայ յաւանին Բագաւանին կարգեալ էր. *աշխարհաընակք* մարդկան ժողովեալ էին»։ Ահա հին աշխարհախումբ տօնն քրիստոնէացեալ։ Թէ ուստի առնլով կու տայ մեզ Խորենացին զայն տեղեկութիւն, Բարդածանէ՞ թէ այլուստ՝ չէ փոյթ. ինչ որ ըսինք՝ է պատմական։

Ըստ Խորենացւոյն (ԿԵ.)՝ Տիգրանայ Բ-ի կը յաջորդէ որդին Վաղարշ.—«Յետ մահուանն Տիգրանայ թագաւորէ Վաղարշ որդէ նորին յերեսուն և երկու ամի հոմանուանն իւրոյ Վաղարշայ Պարսից արքայի»։ Արտաքին ժամանակակից պատմութիւնն ի մէջ Տիգրանայ (Սոյեմոս) և Վաղարշու գիտէ Սանատրուկ արքայ Հայոց որդի Սոյեմայ առ Սեպտիմոս Սեւերոսիւ, ապա զՎաղարշ սորին որդի։ Վաղարշու Դ-ի, այն է յաջորդին Պերոզի 32-րորդ տարին ասէ Խորենացին թագաւորեալ զմերն Վաղարշ.—«Յետ մահուանն Տիգրանայ թագաւորէ Վաղարշ որդի նորին *յերեսուն եւ երկու ամի* հոմանուանն իւրոյ Վաղարշայ Պարսից արքայի» (Խոր. Բ. ԿԵ.). բայց Վաղարշ Դ. թագաւորած չէ 32 տարի, նա թագաւորեց191—208։ Մերոյն Վաղարշու թագաւորութեան հաւանական թուականն է 195—217, այսինքն Սեպտիմոս Սեւերոսէ մինչեւ Մակրինոս, կամ Պարթեւաց Վաղարշու Դ-ի 4-որդ տարիէն մինչեւ Վաղարշու Ե-ի 9-երորդ տարին։

Խորենացին կը ցուցնէ զՎաղարշ մեր աշխարհաշէն, շինիչ երկուց քաղաքաց, որ են Վաղարշաւան և Վաղարշապատ, առաջինն իւր ծննդեան տեղը, և երկրորդն՝ անուանեալն Վարդգեսի աւան։ Վաղարշաւան չկայ ուրեք յիշուած՝ բայց միայն առ Խորենացւոյն. իսկ զՎաղարշապատ, որ չիք յիշուած յարտաքին մատենագիրս

(Ինճիճ. Ստոր. Հին Հայ. 461)՝ կը յիշեն Բուզանդ (Գ. Ե. և Դ. ԾԵ.) և Ագաթանգեղոս՝ բազում ուրեք, իբրև «արքայական կայան», այսինքն մայրաքաղաք (Ագ. ԺԵ), և իբրև «Ձմերոց» (Ագ. ԺԱ)։ Զշինութենէ սորա կը պատմէ Խորենացին այսպէս, յիշելով զգեղեցկագոյնն յերգոց վիպասանաց. «Սա պատեաց պարսպաւ և զհզօր աւանն Վարդգեսի, որ ի վերայ Քասաղ գետոյ. զորմէ յառասպելն ասեն. Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով, եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով, կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի»։ «Այս Երուանդ, կը յաւելու Խորենացին, առաջինն է Սակաւակեացն որ ի Հայկազանց, զորոյ զքոյրն կին առեալ Վարդգեսի՝ շինեաց զաւանս զայս և յորում Տիգրան միջին յԱրշակունեաց նստոյց զհասարակ առաջնոյ գերութեանն Հրէից, որ եղև քաղաքագիւղ վաճառօք։ Այժմ այս Վաղարշ պատեաց պարսպաւ և հզօր պատուարաւ և անուանեաց Վաղարշապատ, որ և Նոր քաղաք» (Խոր. Բ. ԿԵ.)։

Խորենացին յետ դնելոյ համառօտ գովեստ զՎաղարշէ, ասելով «Այլք լոկ կեցին, բայց սեսմ զսա և յետ մահուանն կեալ, յաղագս քարի անուանն քան զթուլագոյնս ի թագաւորաց»—(կամի ասել թէ ուրիշ թագաւորներ, նախորդք նորա, ապրեցան ցորչափ կեցին, սա յետ մահուանն ևս կենդանի է)՝—կը պատմէ, թէ Հայոց վրայ յարձակող հիւսիսային ազգերու դէմ կռուելով մեռաւ.—«Վասն զի ի սորա աւուրս միաբանեալ ամբոխութիւն ի հիւսիսականացն, զԽազրաց ասեմ և զԲասլաց, արտաքս քան զդուռն Ճորայ ելանել, առաջնորդ և թագաւոր ունելով ինքեանց զՎնասեպ ումն Սուրհապ. որք անցեալ վտարին այսր զԿուր գետով։ Որոց պատահեալ Վաղարշ ամբոխիւ մեծաւ և արամբք մարտկօք՝ ցիր դիաթաւալ կացուցանէ զամբոխն ընդ երեսս դաշտին, և ձիգ զհետ եղեալ անցանէ ընդ կապանն Ճորայ։ Ուր միւսանգամ միաբանեալ թշնամեացն՝ յօրինեցին ճակատ. զորս թէպէտ և վանեալ քաջացն Հայոց փախստականս առնէին՝ սակայն Վաղարշ մեռանի ի ձեռաց կորովեաց աղեղնաւորացն»։

Հիւսիսային ազգաց յարձակումը, զոր կը դնէ Խորենացին առ Վաղարշիւ՝ եղած է իբրև 60 ամօք յառաջ Պարթևաց Վաղարշու Բ-ի ժամանակ, այսինքն իբր 136-ին առ Ադրիանոսիւ, թելադրութեամբ Վրաց թագաւորին Փարսմանայ, զոր Վաղարշ Բ. ամբաստանեց ի Հռոմ. բայց Հռոմայեցիք ոչ միայն արդարացուցին զՓարսման, այլ և թոյլ տուին՝ նմա ի պատիւ մատուցանել զոհ ի Կապիտոլիոնին։ Ընդ այս զայրացեալ Վաղարշու՝ պատրաստեցաւ յարձակել Հռոմայեցւոց վրայ, բայց արգելուեցաւ։ Յաջորդ նորա Վաղարշ Գ. (Պերոզն Խորենացւոյն), և ապա Վաղարշ Դ. կատարեցին։

Ընդ վերջնոյն միաբան էր և մերն Վաղարշ (195). բայց ի գալ Սեւերոսի Սեպտիմոսի յարևելս 197՝ Վաղարշ մեր հաշտեցուց զնա ընծայիւք, տալով ևս պատանդ և գունդ աղեղնաւորաց ի Հայոց, ինչպէս կը պատմէ Հերովդիանոս, մատենագիր Բ. դարու։ Բայց յետոյ Կարակալլա, յարշաւանս իւր ի վերայ Պարթևաց, բռնելով բանտարկեց (217) զՎաղարշ, որ և մեռաւ ի բանտի։ Խորենացին կամ աղբիւր նորա շփոթած կը թուի Վաղարշու այս պատմութիւնն ընդ պատմութեան Տիգրանայ Բ. (Սոյեմոսի), ինչպէս արդէն յիշեցինք։

Գանք այժմ ի պատմութիւն Խոսրովու, ըստ տոհմային աւանդութեան՝ մեծին Տրդատայ հօր, զոր արտաքին պատմութիւնն կ'անուանէ Տրդատ Բ։

Խորենացին յետ պատմելոյ զմահն Վաղարշու՝ կը յաւէ. «Եւ առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորա յերրորդ ամի Արտաւանայ Պարսից արքայի։ Եւ նոյնհետայն միաբանեալ զզօրս Հայոց՝ անցանէ ընդ լեառնն մեծ, վրէժս պահանջելով զմահուան հօրն. և վանեալ սրով և գեղարդեամբ զհզօր ազգսն զայնոսիկ՝ մի ի հարիւրոց յամենեցունց պիտանեացն առնու պատանդս. և զիւրոյ տէրութեանն նշանակ՝ արձան հաստատէ հելլենացի գրով, որպէս զի յայտ լիցի ընդ հնազանդութեամբ լինել Հռոմայեցւոց» (Խոր. Բ. ԿԵ.)։

Անցնել զԿովկաս, վանել այն հզօր ազգերն «սրով և գեղարդեամբ», և ոչ այսչափ միայն, այլ և պիտանիներէն,—«ի պիտանեացն» առնուլ հարիւրէն մի պատանդ՝ չէր արդարև դոյզն քաջութեան գործ։ Ի՞նչ օգուտ էր սակայն Խոսրովու այնպիսի հեռաւոր սահմաններ, որպիսի էին այն բարբարոս ազգաց երկիրներն՝ կանգնել արձաններ (կոթող) հելլենացի գրով։ Խորենացին կու տայ պատճառ.—վասն զի Խոսրով նուաճեց այն երկիրն մինչև անդր քան զԿովկաս. ապաքէն զայս կը նշանակէ ասելն՝ «և զիւրոյ տէրութեան նշանակ՝ արձան հաստատէ հելլենացի գրով»։ Հելլենացի գիրն էր երկիւղ տալու համար այն ազգաց՝ թէ զՀռոմայեցիս ունէր իւր պաշտպան։ Զարմանալի է մեր պատմութեան հայրը. երբեմն կ'ընէ մեր թագաւորներն ծոյլ, անպիտան, «որսոց և զբօսանաց պարապեալը», «ոչ ինչ գործ արժանի յիշատակի ցուցեալը», և դարձեալ կ'ընէ զնոսա քան զԱղեքսանդր մեծ աշխարհակալ։ Զիարդ և իցէ՝ Խոսրովու այս արշաւանաց պատմութիւնը կ'առնու Խորենացին որպէս թէ իւր Բարդածանէն. քանզի կը յաւելու անդէն (ԿԶ.). «Զրուցէ մեզ զայս Բարդածան որ յԵդեսիայ»։ Ի վախճանի նոյն ԿԶ. գլխոյն կ'երկրորդէ զնոյն։

«Յայսմ պատմութենէ—իմա Բարդածանէ—առեալ մեր երկրորդեցաք քեզ ի թագաւորութենէն Արտաւազդայ մինչև յարձանն Խոսրովու»։ Բայց և այնպէս անմիջապէս յաջորդ գլխոյն մէջ աղբիւրը փոխուելով՝ լինի «Աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս»։ Եւ արդարև Ագաթանգեղոսի պատմութեան համառօտութիւնն է ԿԷ. գլուխն, զոր կ'սկսի այսպէս. «Որպէս ասացաք՝ ի Վաղարշայ առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորա, հայր սրբոյ մեծին Տրդատայ։ Յաղագս սորա և համատոհմիցն կարճ ի կարճոյ իմն անցանելով աջող քարտուղարն Տրդատայ Ագաթանգեղոս՝ փոքր ի շատէ պատմէ զմահն Արտաւանայ Պարսից թագաւորին, և զբառնալ տէրութեանն Պարթևաց յԱրտաշրէ (ի ձեռն Արտաշրի) որդւոյ Սասանայ, և զնուաճել Պարսից ընդ ձեռամբ նորա, և զքինախնդիր լինել Խոսրովայ, հօր Տրդատայ, և ասպատակաւ հինից աւերել զաշխարհն Պարսից և Ասորեստանի։ Յետ որոյ ասէ, թէ յղեաց Խոսրով յիւր բնիկ աշխարհն ի կողմանս Քուշանաց, զի իւր տոհմայինքն (այսինքն Պահլաւք) ի թիկունս հասցեն և Արտաշրի ընդդէմ կացցեն։ Այլ նոքա, ասէ, չլինէին ունկնդիր, զի հաւանեալք և միամտեալք էին ի տէրութիւնն Արտաշրի քան ընդ տէրութիւն ազգատոհմին իւրեանց և եղբայրութեանն, և թէ՝ Խոսրով առանց նոցա վրէժս պահանջէ. և զնովիմբ ածեալ ասէ, թէ ամս տասն ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ զամենայն երկիրն յապականութիւն դարձուցանէր։ Ապա ասէ և զգալն Անակայ նենգութեամբ, հրապուրեալ ի խոստմունս Արտաշրի, որ ասաց՝ եթէ զբուն պատուական զձեր սեպհական Պահլաւն՝ զայն անդրէն ի ձեզ դարձուցից, և զքեզ թագաւ փառաւորեցից։ Վասնորոյ յանձն առեալ Անակայ՝ սպանանէ զԽոսրով»։

Բայց Խորենացին այս աղբիւրն ևս, իմա զԱգաթանգեղոս, բաւական չհամարելով՝ ԿԸ. և ԿԹ գլուխներով ինքն կ'սկսի պատմել Պարթևաց ծագումը, և կու տայ Պարթև թագաւորաց ազգահամար մը, ընելով զՊարթևս, ըստ աւանդութեան իւրեք Ափղանաց, (Քոնթ տը Քորիպոյ, Պատմ. Պարս. հտ. Բ. էջ. 611), սերունդ Աբրահամու ի Քետուրայ, թէ ժամանակագրութեամբ և թէ անուամբք բոլորովին նոր և տարբեր յոյն և հռոմայեցի ժամանակակից պատմիչներէ, որպիսի են Յուստինոս, Տակիտոս, Յովսեպոս և այլք, զորոց զպատմութիւն կը հաստատեն դահեկանք.—«ՅԱդամայ քսաներորդ առաջներորդ նահապետ մեզ զԱբրահամ աստուածային պատմութիւնքն ցուցանեն, և ի նմանէ եղեալ ազգդ Պարթևաց։ Քանզի, ասէ, յետ մեռանելոյն Սառայի առեալ Աբրահամու կին զՔետուրայ, յորմէ ծնան Եմրան և եղբարք նորա, զոր Աբրահամ ի

կենդանութեանն իւրում մեկնեաց յԽաղտեայ, արձակելով յերկիրն արեւելից։ Յորոց սերեալ ազգ Պարթեւաց. և ի նոցանէ Արշակ քաջ, որ ապստամբեալ ի Մակեդոնացւոց՝ թագաւորեաց յերկրին Քուշանաց ամս երեսուն և մի, և յետ նորա որդի նորին Արտաշէս ամս քսան և վեց, ապա Արշակ նորին որդի որ կոչեցաւն մեծ, որ զԱնտիոքոսն եսպան, և զՎաղարշակ զեղբայր իւր թագաւոր կացոյց Հայոց, երկրորդ իւր առնելով։ Եւ ինքն չուեալ ի Բահլ՝ հաստատեաց զթագաւորութիւնն իւր ամս յիսուն և երիս. վասնորոյ զարմք նորա Պահլաւք անուանեցան, որպէս և եղբօրն Վաղարշակայ՝ ի նախնւոյն անուն Արշակունիք։ Եւ են թագաւորք Պահլաւիկք այսոքիկ։ Յետ Արշակայ մեծի առնու զթագաւորութիւն նորա Արշական յերեքտասաներորդի ամի Վաղարշակայ թագաւորին Հայոց՝ ամս երեսուն. ապա Արշանակ՝ ամս երեսուն և մի, յետ որոյ Արշէզ՝ ամս քսան, ապա Արշաւիր՝՝ ամս քառասուն և վեց։ Սորա լինին որդիք երեք և դուստր մի, որպէս յառաջագոյն ասացի, որոց անուանքն՝ անդրանկանն Արտաշէս կոչիւր, երկրորդին՝ Կարն, երրորդին՝ Սուրէն, և դուստր անուանեալ Կոշմ։

«Արդ յետ հօրն վախճանելոյ, կամ եղև Արտաշիսի ազգաւ ի վերայ եղբարցն թագաւորել, զոր յանձն առեալ եղբարցն, ոչ առաւել ողոքական բանիւք և պատրողօք, քան թէ սաստիւ նուաճեալ նորա։ Եւ Աբգարու պայման ուխտի և դաշինս ի միջի հաստատեալ՝ թագաւորել Արտաշիսի ծննդովք իւրովք։ Իսկ եթէ հատցին զարմք նորա՝ եղբարցն մտանել ի թագաւորութիւն ըստ կարգի աւագութեան։ Եւ Արտաշիսի զայս ի նոցանէ գտեալ՝ գաւառս պարգևէ, ազգ զնոսա սերելով յանուն իւրաքանչիւր. և ի վերոյ քան զամենայն նախարարութիւնս կարգէ, զնախնականն ի վերայ պահելով զանուն ազգին, զի կոչեցին այսպէս. Կարենի Պահլաւ, Սուրենի Պահլաւ և քոյրն՝ Ասպահապետի Պահլաւ, քանզի ի վերայ զօրաց էր այր նորա։ Արդ անցցուք այսուհետև ընդ թիւ թագաւորաց ցեղին Արտաշիսի՝ մինչև ցբառնալ ի նոցանէ տէրութեանն։ Յետ Արշաւրի, որպէս ասացաք՝ թագաւորէ Արտաշէս ամս երեսուն և չորս, Դարեհ՝ ամս երեսուն, Արշակ՝ ամս իննևտասն, Արտաշէս՝ ամս քսան, Պերոզ՝ ամս երեսուն և չորս, Վաղարշ՝ ամս յիսուն, Արտաւան՝ ամս երեսուն և մի։ Զսա սպանեալ Ստահրացւոյն Արտաշրի, որդւոյ Սասանայ, բառնալով զթագաւորութիւնն Պարթևաց. հանելով ի նոցանէ զաշխարհն ժառանգութեան»։

Որովհետև Խորենացին ԻԸ. գլխոյն մէջ պատմած էր չորս Պահլաւ տոհմերուն յաջորդութեան պայմանը, որ որպէս թէ եղած էր միջնորդութեամբ Աբգարու՝ հոս նոյն պատմութիւնը կրկնելուն

պատճառը կը ցուցնէ Խորենացին, այն է յիշեցունել ընթերցողաց Լուսաւորչին պարթեւական ծագումը.—«Բայց մի՛ աստանօր քամբասեսցես զմեզ իբր զաւելագործ ոք, որպէս թէ զմիանգամ պատմեալսն դարձեալ ասացաք. այլ գիտեա, զի ախորժելով վասն ազգականաց մերոյ Լուսաւորչին, քաջահմուտ կամեցեալ լինել ընթերցողացն՝ կրկնագրեցաք երկրորդելով»։

Աւելորդ է ըսել, թէ Խորենացւոյն ԿԸ. և ԿԹ. գլուխներն ամենևին չեն վերաբերիր մեր պատմութեան և չունին կատարեալ պատմական ստուգութիւն, բաց ի թերևս չորս Պահլաւ ցեղերուն պատմութիւններէն։ Խորենացին կը խոստովանի, թէ նաև Յոյներէն շատեր, ինչպէս Պաղեփատոս և Պորփիւր և Փիլեմոն և այլք բազումք գրեցին Պարթևաց վրայ. բայց ինքն կ'ընտրէ մանաւանդ առնուլ Խոռոհբուտ և Բարսումա անուն աննշան պարսիկ հեղինակներու առասպելախառն գործերէն, զատելով ստոյգն և ճշմարիտ.—«Բազում են ժամանակիս այսորիկ պատմողք ի Պարսից և յԱսորւոց այլ և ի Յունաց։ Քանզի յիսկզբան թագաւորութեանն Պարթևաց մինչև ցգաղարումն՝ ընդ Հռոմայեցւոց կալան գործ, երբեմն հնազանդութեամբ և երբեմն պատերազմաւ, զոր պատմէ Պաղեփատոս և Պորփիւր և Փիլեմոն և այլք բազումք. բայց մեք ասասցուք ի մատենէն զոր եբեր Խոռոհբուտ զԲարսումայի»։

Թէ ո՛վ էին Խոռոհբուտ և Բարսումա՝ Խորենացին (գլ. Հ.) կ'իմացունէ մեզ սա համառօտ տեղեկութեամբ. «Այս Խոռոհբուտ դպիր եղեալ Շապհոյ թագաւորին Պարսից, և անկեալ ի ձեռս Յունաց, յորժամ Յուլիանոս զօրու հանդերձ ի Տիզբոն չոգաւ, և ի մեռանելն նորա անդ՝ ընդ Յոբիանու ի Յոյնս ընդ արքունական սպասաւորսն եկն, և մերոյ հաւատոյս դաւանեալ՝ անուանեցաւ Եղիազար, և յոյն լեզու ուսեալ՝ պատմագրեաց զգործս Շապհոյ և Յուլիանու։ Ընդ նմին թարգմանեաց և զառաջին պատմութիւնս մատեան մի, որ գերեկից իւր լեալ Բարսումայի ուրումն անուամբ, զոր Պարսք Ռաստսոհուն կոչեն. յորմէ մեր ուսեալ՝ երկրորդեմք այժմ ի գիրս յայս, թողլով զառասպելաց նորա բարբաջմունս»։

Հաւանական է թէ Խորենացին այս աղբերէն, Խոռոհբուտ—Բարսումայէ, առած է ինչ որ կը պատմէ մինչև ի գլուխն ՀԵ. Հաւանական է նոյնպէս, թէ Խորենացին ջանաց առնուլ այն առասպելախառն մատենէն, ինչպէս կ'ըսէ՝ «զստոյգն, որ ինչ ճշմարտութեան վայելէ պատմութիւն»։ Բայց թէ ունէ՞ր ի ձեռին նաև յոյն պատմիչներ Սասանեանց ժամանակին—Պաղեփատոս, Պորփիւր և Փիլեմոն՝ այս չէ ամենևին հաւանական. նախ՝ վասն զի անտեղի է ընդունել, թէ Խորենացին ունենալով այն յոյն պատմիչներն՝ թո-

զուց զնոսա, և ընտրեց զառասպելախօսն Խոռոհբուտ—Բարսումա․ երկրորդ՝ վասն զի այն անուններով յոյն պատմիչներ չենք գտներ ի պատմութեան։ Կան արդարև Պաղեփատոս և Պորփիւր անուն պատմիչներ. բայց սոքա չէին կրնար ծառայել Խորենացւոյն իբրև աղբիւր, քանզի էին հին, և յորոց Ստրաբոն և Եւսեբիոս կու տան մեզ հատակոտորներ միայն. իսկ Փիլեմոն անուն պատմիչ ամենևին յիշուած չէ ի պատմութեան։ Ուստի յիրաւի կրնանք ըսել, թէ Խորենացին չունէր այնպիսի յոյն հեղինակներ, և ստիպուեցաւ առնուլ այն աննշան աղբերէն, թէպէտ կային ուրիշ յոյն և լատին պատմիչներ Սասանեանց ժամանակին, ինչպէս Դիոն Կասսիոս և այլք, որոց անգէտ կը թուի Խորենացին։

ՀԱ. գլխէն մինչև ՀԵ. Խորենացին ունի Խոսրովու պատմութիւնն, այսինքն զպատմութիւն պատերազմաց նորա ընդդէմ Արտաշրի, Հռոմայեցւոց օգնականութեամբ և առանձինն, և ի վախճանի՝ զպատմութիւն սպանման նորա յԱնակայ։

Անաչառ խօսելով՝ պատմութիւնն Անակայ իւր սարօքն զրոյց (légende) է մանաւանդ քան պատմութիւն։ Թէ զկնի սպանմանն Արտաւանայ Խոսրով յետ տասն ամ նեղելոյ զԱրտաշիր կ՚սպանուի դաւով յԱնակայ, որդի սորա Գրիգոր կը տարուի ի Կեսարիա, Արտաշիր կը մտնէ ի Հայս, յերկիւղէ նորա Տրդատ որդի Խոսրովու կը տարուի նոյնպէս փախստական յարևմուտս, Տրդատ և Գրիգոր կը գտնեն զիրար յանծանօթս, Դիոկղետիանոս կայսր ի վարձ մենամարտութեանն ընդ թագաւորին Գթաց՝ կու տայ Տրդատայ հայրենի թագաւորութիւնը, որ մնացած էր տարիներով պարապ, վկայաբանական հանգամանք նահատակութեանն Գրիգորի և դարձին Տրդատայ ի քրիստոնէութիւն, այլովքն հանդերձ՝—են մեծաւ մասամբ անտեղի զրոյցք. մինչ ժամանակակից պատմութենէ գիտենք, թէ յետ սպանման Արտաւանայ, Հայք օգնականութեամբ Հռոմայեցւոց (Աղեքսանդր Սևերոս) չեն թողուր մտանել ի Հայս Արտաշրի (226—240), և Շապուհ Ա. յաջորդ նորա (240—271), որ մինչև 258 զբաղեալ էր Հռոմայեցւոց դէմ պատերազմներով՝ հազիւ յետ դաշանցն ընդ Փիլիպպոսի (244) իշխեց մտանել Հռոմայեցւոց երկիրներն, եկաւ մինչև յԱնտիոք և բռնեց զՎաղերիանոս գերի (260)։ Մինչև 259 արտաքին ժամանակակից պատմութիւնն չգիտեր Հայոց թագաւոր սպանեալ դաւով և զՀայս նուաճեալ ի Սասանեանց։ Ուստի հաւանական է թէ Տրդատ Բ, ինչպէս ըսինք, ըստ Հայոց Խոսրով որդի Վաղարշու՝ կը թագաւորէր ի Հայս։ 259-ին կը գըտնենք թագաւոր Հայոց Արտաւազդ ումն (թերևս այն Արտաւազդ Մանդակունի, զոր ազգային աւանդութիւնն —Խոր. Բ. ՀԶ.—կը հա-

մարի դայեակ մեծին Տրդատայ) օգնական և բարեկամ Շապհոյ, մինչև խրատ տալ նմա արձակել զՎաղերիանոս։ Ի յարձակել Ներսեհի (292—302)՝ Հայք (Արտաւազդ կամ մանաւանդ յաջորդ նորա Տրդատ Գ. մեծն) են արդէն բարեկամ Հռոմայեցւոց և ձեռնտու Գաղերեայ Ներսեհի դէմ պատերազմին մէջ, որոյ արդիւնք եղաւ քառասնամեայ խաղաղութիւնն, այն է Գաղերիոսի պատերազմէն (297) մինչև ի մահն Կոստանդիանոսի և Տրդատայ մեծի (337)։ Յայսմ քառասնամեայ ժամանակին է Հայոց դարձը, զոր այնպէս հրաշալի դիպօք խճողած են վկայաբանութիւնք, որոց հաւաքումն է Ագաթանգեղոս։ Այս հրաշալի պարագաներէն են Անակայ գալուստն և որ ի կարգին։ Այս համառօտութենէն կը տեսնուի, թէ Խոսրովայ դաւով սպանութենէն մինչև ի թագաւորելն Տրդատայ օգնութեամբ Հռոմայեցւոց (Դիոկղետիանոսի), և անտի այսր մինչև ի մահն Տրդատայ Հայոց դարձին վրայ ինչ որ կը պատմուի յաւանդութեան Հայոց՝ է լոկ զրոյց կամ վկայաբանութիւն (légende)։ Մենք այս ժամանակին (ի մահուանէն Արտաւանայ մինչև ի մահն Տրդատայ) մեր ազգային աւանդական պատմութիւնն ուղղած ենք յիւրում տեղւոջ ժամանակակից պատմութենէ ըստ սկզբանց առողջ քննադատութեան։

Ըստ Խորենացւոյն՝ յետ սպանման Արտաւանայ վերջնոյ թագաւորին Պարթևաց յԱրտաշրէ՝ երկու Պահլաւ ցեղք, Ասպահապետին և Սուրենեան, իրենց ազգականին Արտաւանայ դէմ նախանձու է՝ կը միաբանին Արտաշրի հետ. Կարնան տունը միայն կ'ընդդիմանայ։ Բայց Խոսրով, որ ըստ ոմանց եղբայր էր Արտաւանայ՝ կը փութայ յօգնութիւն նորա. բայց լսելով թէ սպանուած էր նա և թէ բոլոր Պարսից զօրքը և նախարարք, նաև ազգականք նորա, բաց ի Կարնան ցեղէն, միաբանած էին ընդ Արտաշրի՝ կը դառնայ մեծ տրտմութեամբ.—«Քանզի յետ սպանանելոյն զԱրտաւան և թագաւորելոյն Արտաշրի որդւոյ Սասանայ՝ երկու ցեղք Պահլաւին, որ Ասպահապետի և Սուրենեան պահլաւն անուանին, նախանձ պահելով ընդ թագաւորեալ ցեղին իւրեանց հարազատութեան ազգին որ է Արտաշիսին՝ կամաւ յանձն առին թագաւորել Արտաշրի որդւոյ Սասանայ։ Այլ մտերմութիւն պահելով առ եղբայրութիւն ազգականութեանն տան Կարն Պահլաւին՝ ընդդիմացան պատերազմաւ Արտաշրի որդւոյ Սասանայ։ Բայց յառաջագոյն իբրև լուաւ զաղմուկ շփոթին թագաւորն Հայոց Խոսրով՝ դիմեաց յօգնականութիւն Արտաւանայ, թէ հնար լիցի անապարել ապրեցուցանել միայն զԱրտաւանն, և միջամուխ եղեալ յԱսորեստան՝ լսէ զբօթ մահուանն Արտաւանայ և զմիաբանութիւն ամենայն

զօրաց Պարսից և նախարարաց, նաև զիւրոյ ազգին Պարթևաց և Պահլաւկաց, բաց ի ցեղէն Կարնան, առ որ Հրեշտակս առաքեալ՝ դառնալ յաշխարհս մեծաւ տրտմութեամբ և զկծանօք (Խոր. Բ. ՀԱ.)։

Ագաթանգեղոս որ յամենայնի միաբան է ընդ Խորենացւոյն, մանաւանդ թէ աղբիւր նորա՝ չգիտեր Կարնան, Սուրենի և Ասպահապետի Պահլաւ ցեղեր, այլ առհասարակ բոլոր Պարթևաց համար կ'ըսէ, թէ միաբանեալ էին ընդ Արտաշրի.—«Տոհմքն և ազգապետքն և նախարարքն և նահապետքն Պարթևաց միամտեալ և հաւանեալ և նուաճեալ էին ի տէրութիւնն Արտաշրի, քան ընդ տէրութիւն իւրեանց ազգատոհմին և եղբայրութեաննն»։

Ըստ Խորենացւոյն՝ Խոսրով «նոյնհետայն փոյթ ընդ փոյթ աղդ առնէ Փիլիպպոսի կայսեր Հռոմայեցւոց, օգնականութիւն ի նմանէ խնդրելով»։ Բայց, կը յաւելու յաջորդ գլխոյն սկիզբը, «Աղմուկ խռովութեան լեալ ի թագաւորութեանն Փիլիպպոսի՝ ոչ կարաց ի Հռոմայեցւոց գնդաց պարապեցուցանել առ ի զօրավիգն լինել Խոսրովու։ Այլ օգնէ նմա ի ձեռն գրոյ, հրամայելով սատարել նմա յամենայն կողմանց։ Որոց առեալ այսպիսի հրաման՝ հասանեն նմա յօգնականութիւն յԵգիպտոսէ և յանապատէն մինչև ի ծովեզերան Պոնտոսի»։ Ագաթանգեղոս չգիտեր նաև այս պարագայն, այն է զխնդրելն Խոսրովու օգնութիւն Փիլիպպոսէ և զչկարել նորա օգնել Հայոց, և այս չէ իսկ ճշմարիտ, քանզի Փիլիպպոս թագաւորեց 244-ին, մինչ Արտաշիր մեռած էր 240-ին։

Խոսրով, ըստ Խորենացւոյն, ընդունելով ըստ հրամանին Փիլիպպոսի կայսեր անթիւ զօրաց բազմութիւն՝ կ'երթայ ի վերայ Արտաշրի, պատերազմելով կը փախցունէ զնա. և ղրկելով դարձեալ հրաւէր Պահլաւ ցեղերուն գալ միանալ ընդ նմա ընդդէմ Արտաշրի, ի չառնուլ նոցա յանձն՝ կը դառնայ տրտմութեամբ. սակայն կը լսէ, թէ իւր ազգականներէն Վեհսաճան, Կարնան Պահլաւ ցեղէն, կու գար ընտանեօք ի կոչ նորա, կ'ուրախանայ. բայց կ'առնու ընդ հուպ լուր, թէ սպանուած էր նա ընտանեօք յԱրտաշրէ, բաց ի տղայ մանկանէ Պերոզամատ անուն, Կամսարականաց նախնին, զոր փախուցած էին յերկիրն Քուշանաց, այն է ի Բակտրիա (Բահլ). —«Գտեալ (Խոսրովու) զայսչափ բազմութիւն (ի Փիլիպպոսէ)՝ խաղայ ի վերայ Արտաշրի և ճակատ տուեալ՝ ի փախուստ դարձուցանէ, թափելով ի նմանէ զԱսորեստան և զայլ արքայանիստ աշխարհս։ Դարձեալ յղէ ի ձեռն հրեշտակաց առ իւր տոհմայինսն Պարթև Պահլաւիկ ազգս և առ ամենայն զօրս աշխարհին Քուշանաց, զի առ նա եկեալ վրէժս յԱրտաշրէ պահանջեսցեն, և զարժանաւորն

ի նոցանէ թագաւորեցուսցէ, զի մի՛ տէրութիւնն հեռասցի յինքեանց։ Իսկ նոցա ոչ առեալ յանձն, յառաջասացեալ ցեղիցն որ Ասպահապետ և Սուրէն անուանին՝ դառնալ Խոսրով յաշխարհս մեր, ոչ այնչափ ուրախացեալ ընդ յաղթութիւնն, որչափ ընդ վերջակացութիւն ազգականացն դժգմեալ։ Ցայնժամ հասանեն առ նա ոմանք ի հրեշտակաց իւրոց որք ի պատուականագոյն ազգն երթեալ էին, ի խորագոյն աշխարհն, ի նոյն ինքն ի ներքս ի Բահլ. բերին նմա համբաւ, թէ ազգական քո Վեհսաճան հանդերձ ցեղիւն իւրով Կարենան Պահլաւին ոչ հնազանդեաց Արտաշրի, այլ ի կոչդ քո դիմեալ գայ առ քեզ։

«Թէպէտև յոյժ զուարճացաւ Խոսրով ընդ լուր գալստեան ազգականացն՝ սակայն ոչ յամեաց ուրախութիւնն, ընդ հուպ հասանելով բօթն՝ եթէ ինքնին Արտաշիր հանդերձ միաբանութեամբ զօրացն հետահաս եղեալ՝ կոտորեաց զամենայն ցեղ Կարենան Պահլաւին, ջնջելով զամենայն արու յերիտասարդաց մինչև ցստնդիայս, բայց ի միոյ տղայոյ, զոր առեալ մտերիմ տան նորա, Բուրզ անուն՝ փախեաւ յաշխարհն Քուշանաց, հասուցանելով յազգայինս նորա. զոր բազում ջանիւ խնդրեալ Արտաշրի զմանուկն ի ձեռն առնուլ՝ ոչ կարաց յազգականացն կուսակցելոց, մինչև յոչ կամաց երդնուլ՝ անկասկած լինել մանկանն. վասն որոյ բիւր առասպելս յօդեցին Պարսք զնմանէ, անբանից սպասաւորել մանկանն։ Սա է Պերոզամատն, նախնի մեծի ազգին Կամսարականաց, զոր յիւրում տեղւոջ պատմեսցուք»։ (Տես Խոր. Բ. Զէ.)։

Խոսրով զայրանալով, ասէ Խորենացին, այս կոտորածին վրայ, և չգտնելով օգնութիւն Հռոմայեցիներէն—քանզի յետ մահուն Փիլիպպոսի շփոթեցաւ Հռոմայեցւոց տէրութիւնն, և յաջորդք Փիլիպպոսի (249—259) Դեկիոս, Գաղղոս Վաղերիանոս չկրցան օգնել նմա՝—իւր զօրօք և հիւսիսային ազգերով յարձակելով Արտաշրի վրայ՝ կը հալածէ զնա մինչև ի Հնդիկս.—«Այլ մեք այժմ ասասցուք որ ինչ զկնի կոտորածին ազգին Կարենան Պահլաւին, զորոյ զվրէժն ոչ թուլագոյնս ինչ խնդրեաց թագաւորն Հայոց Խոսրով։ Թէպէտ վախճանեալ Փիլիպպոսի և շփոթեալ թագաւորութեանն Հռոմայեցւոց, մարդ ի մարդոյ առնլով զտէրութիւնն սակաւաժամանակեայ, Դեկիոս և Գալլոս և Վաղերիանոս կայսերք, ոչ օգնեցին նմա՝ սակայն Խոսրով զօրօք իւրովք և այլ սիրելեօք յարեցելովք յինքն և հիւսիսային ազգօք Արտաշրի յաղթեաց, հալածական առնելով մինչև յաշխարհն Հնդկաց»։

Այս պատմութիւն Խորենացւոյն, թէպէտ մեծաւ մասամբ համաձայն Ագաթանգեղոսի, որ կու տայ Խոսրովու իբր տասը տարի

յարձակել Պարսից երկիրն, աւերել, քանդել և հալածել զԱրտաշիր՝ բոլորովին տարբեր է արտաքին ժամանակակից պատմութենէ։ Ըստ արտաքին ժամանակակից պատմութեան՝ ազգականք Արտաւանայ և ի Պարթևաց ոչ սակաւք կը միաբանին Հայոց հետ, որք օգնականութեամբ Աղեքսանդրի Սևերոսի կայսեր (222—235), և ոչ Փիլիպպոսի, որ աւելի քան քսան ամօք յետոյ է, իբր չորս, և ոչ տասը տարի, կռուելով կը վանեն զԱրտաշիր։

Ըստ Խորենացւոյն, որ դարձեալ միաբան է ընդ Ագաթանգեղոսի, կամ մանաւանդ կ'առնու ի նմանէ, Արտաշիր հալածուելով այսպէս ստէպ ի Խոսրովայ՝ կը խորհի տալ սպանանել զԽոսրով դաւով ի ձեռն Անակայ ուրումն, միոյ յազգականաց Խոսրովու։ Հոս յիշենք միայն հարևանցի, թէ Հայոց դարձին պատմութիւնը կ'սկսի Անակայ գալստեան պատմութեամբ, որոյ համառօտութիւնն է այս. «Փախուցեալ ի Խոսրովայ Արտաշիր մինչ ի յաշխարհն Հնդկաց և նեղեալ յոյժ՝ բազում խոստմունս նախարարացն առնէ, թէ ոք բուժեսցէ զնա յայնմանէ, թէ հնարիւք դեղոց և թէ գաղտնի խողխողմամբ սրոյ՝ այնպէս պարգևս տալ խոստանայր. մանաւանդ Պարթևազանցդ, ասէ, դիւրահնար գոգցես ի ձեռն կեղծաւոր սիրոյ զդաւելն։ Ազգականութեան անուամբ պատրել՝ ի դոսա վստահանայ. խոստանայր զբուն տունն դարձուցանել ի նոսա, որ Պահլաւն կոչէր, զարքայանիստ քաղաքն Բահլ և զամենայն աշխարհն Քուշանաց։ Նա և թագաւորութեան ձև և շուք խոստանայր, և զհասարակ Արեաց, ընդ իւրով ձեռամբ երկրորդ իւր լինել։ Յոր հրապուրեալ Անակայ որ էր ի ցեղէն Սուրենեան Պահլաւէ՝ յանձն առնու սպանանել զԽոսրով։ Եւ հատուածի պատճառաւ փախստական լինի յԱրտաշրէ. և զհետ մտանելով զօրացն Պարսից առ պատճառէ, որպէս թէ փախստական վարելով զնա ընդ Ասորեստան՝ հանեն զառեզերբ սահմանացն Ատրպատականի ընդ մէջ Կորդուաց։ Զոր լուեալ մեծին Խոսրովայ յՈւտէացւոց գաւառին, իբր զԿարենեանցն կարծեցեալ եկաւորութիւն՝ գունդ առաքէ յօգնականութիւն Անակայ։ Որոց պատահեալ Անակայ՝ ածեն զնա հրամանաւ թագաւորին ի գաւառն որ անուանեալ կոչի Արտազ, ի տեղի դաշտավայրս, ուր յայտնեցան նշխարք սրբոյ և մեծի առաքելոյն Թադէի։

Եթէ պարտ է հաւատալ Խորենացւոյն՝ Անակայ օթևանին տեղն ի դաշտին Արտազու՝ դիպեցաւ «մօտ առ դիրս սրբոյ առաքելոյն», և հոն եղաւ յղութիւն մոր Լուսաւորչին. և այս անտարակոյս վերին իմն խնամօք, որպէս զի նա որ Թադէոսի հոգևոր մշակութեան պակասութիւնը պիտի լնոյր՝ «առ հանգստարանաւ նորա առնոյր զլինելութիւն»։ Թերևս հնար էր գիտնալ, թէ Անակայ

-օթեւանին տեղն էր Թադէոսի հանգստարանն. բայց թէ յղութիւնն եւ Լուսաւորչին եղաւ հոն՝ զայս գիտնալ չէր հնար ումեք առանց մասնաւոր յայտնութեան։ Այսպիսի անհամ բարեպաշտ գիւտերու պիտի հանդիպինք ստէպ մեր այս պատմութեան մէջ։ Ահա բանք Խորենացւոյն. «Ի բնակելն Անակայ ի դաշտին Արտազու՝ պատահէ սորա տեղի օթարանին մօտ առ դիրս սրբոյ առաքելոյն, որպէս թէ ի ներքսագոյն սրսկապանի խորանին, և. անդ ասեն զյղութիւն մօր սրբոյ և մեծի Լուսաւորչին։ Վասն որոյ և զնորին առաքելոյ շնորհն ընկալեալ, որ առ հանգստարանաւ նորին զյինելութիւնն էառ՝ զնորին ելից զհոգևոր մշակութեան պակասութիւն»։

Իբր երկու տարի յետոյ Անակ կ'սպաննէ զԽոսրով, և կը ջնջուի ընտանեօք, բաց ի տղայ մանկանէ որ կ'ազատի, իբրև յորովայնէ սահմանեալ Լուսաւորիչ վերին խնամօք.—«Եւ յետ անցելոյ երկուց ամաց գալստեանն Անակայ ի Հայս՝ յերրորդումն սպանանէ զԽոս-րով, որ թագաւորեաց ամս քառասուն և ութ, և մեռանի ինքն և իւրքն ամենայն, պահելով խնամոցն Աստուծոյ զսա միայն, որ ակնարկութեամբ Աստուծոյ և շնորհօք առաքելոյն ստեղծանել կամ լուսաւորել ասեմք յարգանդի մօրն, զառաքելութեան իւրոյ զշնորհս ի ձեռն տալով նմա։ Իսկ զմնացեալս ի զրուցացս ուսու-ցանէ քեզ Ագաթանգեղոս»։

(Հոս ի դէպ է յաւելուլ իբրև դիտողութիւն, որ անունն Անակ՝ է յունարէն և կը նշանակէ բռնաւոր կամ սպանող)։

Ըստ Ագաթանգեղոսի՝ Անակայ տան կոտորածէն փախուցեալ մանկունք են երկու, որոց զմին, Գրիգոր, փախուցանեն ի Յոյնս, և զմիւսն ի Պարսս.—«Բայց միայն երկու մանկունս փոքրկունս յորդւոցն Պարթևին պրծեալ ումն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն. զմին ի կողմանս Պարսից, և զմին ի կողմանս Յունաց առեալ փախչէին» (Ագաթ. Բ.)։ Առաջնոյն վրայ կը յօդէ Զենոբ Գլակ առասպել մը՝ զոր արժան կը համարինք յիշել։ Ըստ Զենոբայ՝ որպէս թէ եղբայր Լուսաւորչին կը կոչուէր Սուրէն, զոր փախուցին ի Պարսս, ուր սնաւ նա առ հօրաքեռ իւրում, կնոջ թագաւորին Հեփթաղաց, և երբ զարգացաւ՝ գնաց ճենաց երկիրն, ուր յետ մնա-լոյ ամս տասն՝ թագաւորեց երկրին ճենաց իննևտասն ամ։ Ահա բանք Զենոբայ. «Իսկ զմիւս եղբայր նորա (Լուսաւորչին) որ կոչէր Սուրէն, մանկաբարձքն փախուցին ի դուռն Պարսից, և անդ սնաւ առ հօրաքեռն իւրում, որ էր կին թագաւորին Հեփթաղաց Ջուան-շրի հեփթաղի. որ իբրև զարգացաւ՝ գնաց յերկիրն ճենաց յետ մահուն Խոսրովուհեայ (հօրաքեռ իւրոյ), և կացեալ անդ ամս տասն՝ թագաւորեաց անդ ի վերայ երկրին ճենաց ամս իննևտասն։ Զոր

ոմանք համբաւեն թէ Սգօն աւեն եղբօրն Գրիգորի, որ է Ցակոբ.
բայց ոչ գիտեն զստոյգն, զի Ցակոբն այն հօրաքեռորդի էր սրբոյն
Գրիգորի, և անուն մօր նորա Խոսրովուհի։ Իսկ յորժամ մեռաւ
մայր նորա, և զթագաւորութիւնն բարձին ի հօրէ նորա Տիրանայ—
(ինչ թագաւորութիւն է այս, և ով էր Տիրան),—զի եսպան զնա ի
պատերազմի արքայն Լփնաց Ռեգէս՝ ապա Ցակոբ հանդերձ քերբն
իւրով Սակդնէիւ մնաց որբ։ Եւ յետ ժամանակաց քեռորդի նորա
գնաց յաշխարհն Գթաց և անդ թագաւորեաց, զոր յետոյ Տրդատ
ըմբռնեաց, մինչ առ արքային Ցունաց էր։ Զի սա էր, որ եկն ի
պատերազմ ի վերայ Դիոկղետիանոսի արքային Ցունաց, որպէս
Ագաթանգեղոս պատմէ» (Զենոբ, էջ 21, 22)։

Խորենացւոյն աղբիւր էր մինչև ցարդ (Գլ. ՀԴ.) Խոռոհբուտ։
ՀԵ. գլխով Խորենացին կ'առնու դարձեալ նոր աղբիւր, այն է զՓիր-
միլիանոս եպիսկոպոս Կեսարու, որմէ առած է, ինչպէս կ'ըսէ, ըզ-
պատմութիւն իւր Խոսրովու մահուանէն մինչև ի թագաւորել Տըր-
դատայ.—«Փիրմիլիանոս եպիսկոպոս Կեսարու Կապադովկացւոց՝ էր
աքանչելի յուսումնասիրութեան, որ և ի տղայութեան իւրում առ
Որոգինէս երթեալ վարժեցաւ։ Սա բազում խօսս արար, յորոց մի է
պատմութիւն հալածանաց եկեղեցւոյ, որ յառաջ յաւուրս Մաքսի-
միանոսի և Դեկոսի յարեաւ, և որ հուսկ յետոյ յամս Դիոկղետիա-
նոսի, շարայարեալ ի նա և զգործս թագաւորացն»։ Ըստ Խորենա-
ցւոյն՝ Փիրմիլիանոսի այս հալածանաց պատմութեան մէջ գրած էր
նաև Խոսրովու հալածանաց վրայ ի Հայս. բայց Խորենացին այս
պատմութիւնն զվկայելոց ի Հայս, ինչպէս նաև այն, թէ Խոսրով
ի պատերազմին Կարակալլայի ընդդէմ Վաղարշու մնաց չեզոք, չհա-
մարելով ճշմարիտ՝ կը թողու.—«Գրէ բազում վկայեալս և ի Խոս-
րովայ ի մերում աշխարհիս. բայց զի ոչ ճշմարտութեամբ ոճով
պատմէ, և ոչ զանուանս նշանակէ կամ զտեղի կատարմանցն՝ ոչինչ
կարևորագոյն համարեցաք երկրորդել։ Նոյնպէս և որ զԱնտոնէ
որդւոյ Սևերեայ ասէ պատերազմեալ ընդ Վաղարշայ Պարսից ար-
քայի ի Միջագետս և մեռանել ի մէջ Եդեսիայ և Խառանու, և
մերոյն Խոսրովու ոչ յօգ հակամտեալ»։

Խոսրովու հալածանաց համար չունինք ըսելու բան. քանզի
չէ անհաւանական, թէ թերևս յառաջին դարէ անտի քրիստոնէու-
թեան, ըստ վկայութեան Տերտուղիանոսի, եկեղեցական մատենա-
գրի Գ. դարու՝ հաւատացեալք բազում էին ի Հայս (Գաթըրճ.
Հտ. Բ. 465)։ Բայց այն որ կ'ըսէ թէ ի պատերազմին Կարակալ-
լայի Խոսրով ոչ ի Պարսիկս յարեցաւ և ոչ ի Հռոմայեցիս՝ ոչ թէ
Խոսրովու կը պատշաճի, այլ Սանատրկոյ (193), որ ըստ Հերովդիա-

նու ժամանակակից պատմագրի՝ չյարեցաւ ո՛չ ի Նիգեր, հակառակորդն Սեպտիմեայ, և ոչ ի նոյն ինքն Սեպտիմոս։ Անտոնինոսի Կարակալլայի, Սեպտիմեայ որդւոյն պատերազմն էր ո՛չ թէ ընդ Վաղարշու Դ. (209—216), այլ ընդ Արտաւանայ (216—226)։ Բայց ինչ որ կը պատմէ, կ՚ըսէ, Փիրմիլիանոս Խոսրովու մահուանէն մինչ Տրդատայ թագաւորութիւնը՝ պէտի առնունք իբրև ստոյգ.—«Իսկ որ ինչ զկնի մահուանն Խոսրովու մինչև ցթագաւորութիւնն Տրդատայ ի ժամանակս անիշխանութեանն պատմէ, ստոյգ համարելով՝ երկբորդեմք համառօտ բանիւք»։ Տրդատայ անիշխանութեան ժամանակի պատմութիւնն ունինք ի ՀԹ. գլուխն Խորենացւոյն. բայց զայսմանէ ի ստորև։

Սակայն այս աղբիւր ևս Խորենացւոյն, Փիրմիլիանոս, չունի զօրութիւն. քանզի Փիրմիլիանոս, որ մեռած էր Գ. դարուն կիսուն մօտ (269, տես Գաթըրճ. Հտ. Բ. էջ 465), ինչպէս կրնար պատմել զանցս Գ. դարուն վերջին տարիներուն, նա մանաւանդ Դ. դարուն առաջին տարիներուն, որպիսի են գործք Տրդատայ յանիշխանութեան ժամանակին։ Չխարդ և իցէ՝ Խորենացին որպէս թէ Փիրմիլիանոսէ առնլով կը տանի յառաջ զիւր պատմութիւնն այսպէս. «Նոյն այր ասէ, թէ յետ սուսերահարն լինելոյ Խոսրովու, միաբանեալ նախարարք Հայոց՝ ածեն իւրեանց յօգնականութիւն զզօրս յունաց որ ի Փռիւգիայ՝ Պարսից ընդդիմանալ և պահել զաշխարհս։ Եւ խնկոյն ազդեցին Վաղերիանոսի կայսեր։ Բայց վասն զի Գութք անցեալ ընդ Դանուբ գետ զբազում գաւառս գերի վարեցին, և զԿիւկլադայս կղզիս աւար առին՝ վասնորոյ ոչ ժամանէ մերոյ աշխարհիս թիկունս լինել Վաղերիանոս. նա և ոչ յերկարէ զկեանսն, առնլով ի նմանէ զթագաւորութիւնն Կղաւդիոս, և յետ նորա Աւրելիանոս հուպ ընդ հուպ փոխանորդելով զմիմեանս. այլև ամսականօք թագաւորեալ Կիւնտոս և Տակիտոս և Փղոռիանոս եղբարք։ Վասնորոյ համարձակաբար արշաւեալ ի մեջ Արտաշրի, և զզօրս Յունաց փախստական արարեալ՝ գերելով զյոլով մասն աշխարհիս յաւեր դարձուցանէ։ Յաւէտ գաղթեալ նախարարքն Հայոց՝ հանդերձ ազգաւն Արշակունեաց ի Յոյնս ապաւինէին. յորոց մի էր և Արտաւազդ Մանդակունի, որոյ առեալ զՏրդատ որդի Խոսրովու՝ ի դուռն կայսեր հասուցանէ։ Վասնորոյ հարկաւորեալ Տակիտոս՝ ընդդէմ Արտաշրի գայ զկողմամբք Պոնտոսի, և զեղբայր իւր զՓղոռիանոս այլով գնդաւ ընդ Կիլիկիա արձակէ։ Իսկ Արտաշրի հասեալ ի Տակիտոս՝ ի փախուստ դարձուցանէ, որ և սպանաւ ի յիւրոցն ի Ճանիւս Պոնտացւոց, որ են Խաղտիք. նոյնպէս և եղբայր նորա Փղոռիանոս յետ ութսուն և ութ աւուր ի Տարսոն։ Բայց Յունաց թա-

գաւորեաց Պռոբոս, և խաղաղութիւն արարեալ ընդ Արտաշրի՝ բաժանէ զաշխարհս սահմանադրութեամբ փոսս գործելով։

Այս պատմութեան մէջ, թող ուրիշ պարագաներ՝ ժամանակագրութիւնն միայն բաւական է ցուցնել, թէ աղբիւր Խորենացւոյն տգէտ է հռոմէական պատմութեան։ Նախ կ'ըսէ, թէ Հայք «յետ սուսերահարն լինելոյ Խոսրովու» բերին Յունաց (Հռոմայեցւոց) զօրքըն ի Փռիւգիայ, կամի ասել Պոնտոսէ, և «ազդեցին» (իմացուցին) Վաղերիանոսի կայսեր, (պարտի լինել՝ Աղեքսանդրի Սեւերոսի 222—235). Վաղերիանոս չէր կրնար օգնել Հայոց Արտաշրի դէմ, վասն զի իբր 30 ամօք յետոյ է նա (253—259), և յերթալն ի վերայ Պարսից, Շապհոյ Ա՝ ինկաւ գերի (259) և մեռաւ ի գերութեան 70-ամեայ։ Դարձեալ՝ Փիրմիլիանոսն Խորենացւոյն Վաղերիանոսի իսկ և իսկ յաջորդած կը դնէ զԿղաւդիոս (268—270) և զԱւրեղիանոս (270—275), մոռնալով իբր տասն ամ թագաւորողն Գաղիենոս (259—268). ապա առ սակաւժամանակեան յաջորդօքն նորա Տակիտոսիւ և Փլորիանոսիւ (276), կու տայ Արտաշրի մտանել ի Հայս, յաղթել Տակիտոսի (275—276), մինչ Արտաշիր մեռած էր 240-ին, և կը թագաւորէր Շապուհ Ա. (240—271)։ Աղբիւր Խորենացւոյն անգէտ է նաև արշաւանին Գորդիանոսի Գ, որ փախոյց զՇապուհ (242)։ Չէ ճիշդ նաև՝ ինչ որ կ'ըսէ Պրոբոսի համար. Պրոբոս (276—282) արդարև ամրացոյց զսահմանս տէրութեանն խրամովք և որմովք, բայց ոչ յարևելս առ Արտաշրիւ, քանզի Վռամայ Բ.-ի (275—292) դէմ էին արշաւանք նորա, այլ ընդդէմ Գերմանաց՝ Հռենոսի և Ելլպա գետոյն կողմերն, ուր շատ բարբարոս ցեղեր նուաճեց։

Ըստ Խորենացւոյն՝ ի մտանել Արտաշրի ի Հայս՝ Նախարարք կը գաղթեն, և Արտաւազդ Մանդակունի կը փախցունէ զՏրդատ մանուկ, որդի Խոսրովու սպանելոյ յԱնակայ, մինչ արտաքին ժամանակակից պատմութիւնն ոչ միայն չտար մուտ Արտաշրի կամ Պարսից ի Հայս, և ոչ իսկ յետ դաշանցն Փիլիպպոսի ընդ Շապհոյ, այլ և գիտէ զՀայս ոչ թէ յանիշխանութեան, այսինքն առանց թագաւորի, այլ ընդ իշխանութեամբ Տրդատայ Բ.-ի (որ է Խոսրովն Հայոց) մինչև 249, երբ Հռոմայեցիք (Դեկոս, 249—251) յաղթուեցան ի Գթաց որ անցան ընդ Դանուբ, և սպանուեցաւ կայսրն։

Այս թուականէն ետքը սկսաւ խլրտել Շապուհ, և առնուեցան շատ տեղեր որ էին ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց, թերևս և Հայաստան, ուր արդէն կը տիրէր ըստ արտաքին պատմութեան Արտաւազդումն, յաջորդ Տրդատայ Բ.-ի, մինչև ստիպուեցաւ Վաղերիանոս գալ Շապհոյ վրայ և ինկաւ գերի (260)։ Այնուհետև Հայք են ընդ ազդեցութեամբ Շապհոյ։ Արդարև կը տեսնենք զԱրտա-

ւագդ արքայ Հայոց՝ բարեկամ Շապհոյ, զոր կը յորդորէ իսկ նա թղթով արձակել զՎաղերիանոս. ի կողմն Պարսից են Հայք նաև ի պատերազմին Աւրեղիանոսի ընդդէմ Պալմիւրացւոց (273), այսինքն առ Վռամաւ Ա. (272—275)։ Առ Պրոբոսիւ (276—282) և առ յաջորդաւ նորա Կարոսիւ (282—283), որոց յաղթութիւններն Պարսից դէմ առ Վռամաւ Բ. (275—292) գիտէ աղբիւր Խորենացւոյն՝ կը թուի թէ Հայք ազատեցան յազդեցութենէ Պարսից, այնպէս որ յարշաւանս Գաղերիոսի (296) ընդդէմ Ներսեհի, որ գրաւած էր զՄիջագետս և զՀայաստան՝ կը գտնենք զՀայս օգնական նիզակակից Հռոմայեցւոց։ Յետ յաղթութեանն Գաղերիոսի առ Դիոկղետիանոսիւ Հայք եղան միւսանգամ մասն Հռոմէական պետութեան, անտարակոյս իբրև թագաւորութիւն, որոյ թագաւորն, թէպէտ չյիշուիր յանուանէ յարտաքին պատմութեան՝ եղաւ Տրդատ Գ. մեծ (297-ին, կամ թերևս յառաջ իսկ, իբր 287-ին), որդի Տրդատայ Բ-ի, կամ Խոսրովու՝ ըստ ազգային աւանդութեան։ Այս թուականէն, 287 կամ 297, կ'սկսի թագաւորութիւնն Տրդատայ մեծի, զորմէ բազում ինչ կը պատմէ ազգային աւանդութիւնն, ինչպէս պիտի տեսնենք, խառն ընդ պատմութեան դարձին Հայոց, և այս պատճառաւ մեծաւ մասամբ վկայաբանական։

Չէ անդէպ յիշել հոս Վիքթոր Լանկլուայի դատաստանը Փիրմիլիանու հալածանաց պատմութեան հատակոտորներուն վրայ, զոր կը բերէ Խորենացին. «Մինչև ցարդ ծանօթ էր հերետիկոսաց մկրտութեան վրայ Փիրմիլիանոսէ նամակ մը միայն, ուր կը հակառակի նա կարծեաց եպիսկոպոսին Հռոմայ, և որ կը գտնուի Կիպրիանոսի թղթոց հետ։ Մովսէս Խորենացի պահած է մեզ իւր պատմութեան մէջ բաւական երկայն հատակոտոր ուրիշ մատենէ, զոր Փիրմիլիանոս գրեց ի վերայ հալածանաց եկեղեցւոյ, և որ արժանի էր աւանդուելու մեզ ամբողջ։ Սակայն կ'ըսենք, թէ ի հատակոտորսն որ հասած են մեզ (առ Խորենացւոյն)՝ պատմութիւնը չունի ճշդութիւն, մանաւանդ ի տեղեկութիւնսն՝ զորս Փիրմիլիանոս կու տայ հռոմայեցի կայսերաց և նոցա պատերազմական արշաւանաց վրայ»։

Գաղղիացի գիտունն ակնածութեամբ կը թուի յայտնել զիւր կասկած զստուգութենէ Փիրմիլիանեան հատակոտորոց. բայց մեք կը համարձակիմք յայտնապէս ըսել, թէպէտ առ այժմ իբրև ենթադրութիւն, թէ Փիրմիլիանոսի անուանեալ հալածանաց պատմութիւնն, որմէ իբր թէ են հատակոտորք Խորենացւոյն՝ ոչ այլ ինչ են, եթէ ոչ վկայաբանական (légendaire) գրուած յառաջնում կիսու Դ. դարու, անմիջապէս զկնի մահուն Տրդատայ (337), յորե-

նեալ յունէ մը և պիտակաբար ընծայեալ Փիրմիլիանոս։ Այս կեղծ գրուածն է, որ ծառայած է ի պատմութեան դարձին Հայոց իբրև աղբիւր ոչ Խորենացւոյն միայն, այլև Ագաթանգեղեան մատենին, գործ միոյ ի թարգմանչաց մերոց և պիտակ, բայց խորհրդաւոր անուամբ կոչուած Ագաթանգեղոս, այսինքն՝ «Հրեշտակ կամ աւետաբանիչ բարութեան» (Գաթըրճեան)։ Փիրմիլիանոս ընծայուած պատմութիւնն կամ մանաւանդ վկայաբանութիւն, որ է առաջին կամ գլխաւոր աղբիւր պատմութեան դարձին Հայոց՝ կը թուի թէ չկար կամ չէր տակաւին ծանօթ առ Եւսեբեաւ, որ գիտակ է Փիրմիլիանոս անձին, բայց ոչ այն պատմութեան։ Արդարև զարմանալի է, որ Եւսեբիոս (267—338) ժամանակակից Փիրմիլիանոս և Հայոց դարձին, գիտնալով զՀայս յառաջ քան 310 քրիստոնեայ և ջերմ յաստուածապաշտութեան՝ չգիտեր այնպիսի զարմանալի նշաններով կատարուած դարձ ի Հայս. պատճառն այս է որ վկայաբանութիւնք, որոց գլխաւորն, թերևս և վերջինն էր Փիրմիլիանոսն, Դ. դարուն կիսուն մօտ սկսելով՝ տակաւ տուին այն դարձին հրաշալի ձև և գտան մուտ յաւանդութիւն ազգին, այնպէս որ հազիւ ուրեմն Սոզոմենոս, իբր 100 տարի յետոյ, այն է ի սկզբան Ե. դարուն, կը յիշէ զՏրդատ արքայ Հայոց յանուանէ, աստուածեղէն նշանաց ինչ կատարելոց ի տան նորա լեալ քրիստոնեայ.—ἐκ τινὸς παραδόξου θεοσεμείας περὶ τὸν αὐτοῦ εἶχον χριστιανόν γένεσθαι. ինչպէս նաև Բուզանդ ունի ինչ ինչ Փիրմիլիանեան զրոյցներէն։ Հայոց դարձին վրայ պիտի խօսինք յետոյ առանձինն. այժմ գանք դարձեալ ի պատմութիւն Արտաշրի։

ՀԷ. գլխով կը պատմէ Խորենացին զգործս Արտաշրի յետ նուաճելոյ նորա զՀայս, այսինքն նախ աւերել զերկիրն, և ապա «գեղեցկապէս յարդարել», նախարարներն իջուցանել իրենց ամրութիւններէն, պայծառացունել կրակապաշտութիւնը և խափանել կռապաշտութիւնը, նորոգել սահմաններն կոթողներով յիւր անուն, միով բանիւ գրաւել զերկիրն իբրև Պարսից նահանգ պարսիկ գործակալներով։ Բայց այս պատմութիւն չունի ամենևին ստուգութիւն, վասն զի Արտաշիր, զոր աղբիւր Խորենացւոյն կը դնէ առ Պրոբոսիւ, այսինքն 276—282՝ մեռած էր 240-ին, իբր 25 ամօք յառաջ. ապա չէ հնար թէ գտաւ նա մուտ ի Հայս և բրաւ այն բաներն. մանաւանդ որ, ինչպէս արդէն ըսուած է՝ ժամանակակից պատմութիւնն յայտնապէս կ'ըսէ, թէ Արտաշիր հալածուեցաւ միացեալ զօրութենէն Հայոց և Հռոմայեցւոց և չգտաւ մուտ ի Հայս մինչև ի մահ իւր։ Ահա պատմութիւն Խորենացւոյն. «Բայց Յունաց թագաւորեաց Պռոբոս, և խաղաղութիւն արարեալ ընդ Ար-

տաշրի՝ բաժանէ զաշխարհս սահմանադրութեամբ՝ փոսս գործելով»: Զայսմանէ խօսեցանք վերագոյնն: «Եւ Արտաշրի նուաճեալ զազգ նախարարացն՝ զգաղթեալսն անդրէն դարձուցանէ, և զամրականսն ի վայր իջուցանէ, բաց ի նախարարէ ումեմնէ որոյ անուն Օտայ կոչիւր, ի տոհմէ Ամատունեաց. որ փեսայն էր ազգին Սլկունեաց և սնուցանող Խոսրովիդխտոյ, դստեր Խոսրովի. որջացեալ յամուրն Անի իբր ի կաղաղի հանդարտութեան զօղեալ: Իսկ Արտաշրի գեղեցկապէս յարդարեալ զաշխարհս Հայոց՝ ի կարգ առաջին հաստատէր: Նաև զԱրշակունիսն, զմեկուսացեալսն ի թագէն և յԱյրարատն բնակելոյ՝ կարգէ ի նոյն տեղիս մտիւք և ռոճկօք որպէս էինն: Եւ զմեհենիցն պաշտամունսն առաւել ևս յորդորէ, այլև զհուրն որմզդական ի վերայ բագնին որ ի Բագաւան՝ տնչէջ հրամայէ լուցանել: Բայց զանդրիսն, զոր արար Վաղարշակ պատկեր իւրոց նախնեացն հանդերձ արեգակամբ և լուսնիւ յԱրմաւիր, և փոխեցաւ ի Բագարան և դարձեալ յԱրտաշատ՝ զայնոսիկ փշրէ Արտաշիր: Եւ զերկիրս գրով ընդ հարկաւ իւրով արկանէ և ամենեւիմբ զիւր անունն հաստատէ:

«Նաև զսահմանս հաստատեալս յԱրտաշիսէ զքարինս յերկրի կացուցանելով՝ նորոգեաց և յիւր անունն փոխելով արտաշիրական անուանեաց: Եւ կալաւ զաշխարհս մեր որպէս զմի յաշխարհացն իւրոց, հանդերձ պարսիկ գործակալօք ամս քսան և վեց. և յետ նորա որդի նորին որ անուանեցաւ Շապուհ, որ լսի արքայի մանուկ, ցթագաւորելն Տրդատայ ամ մի»:

Սակայն մասնաւոր դիտողութեան արժանի է այս պատմութեան մէջ քոյր Տրդատայ Խոսրովիդուխտ, զոր որպէս թէ Օտայ նախարար Ամատունի, սնուցիչ նորա, պահեց յԱնի. թէպէտ չէ հաւանական թէ Օտայ հանդերձ Խոսրովիդխտով իբր 26 տարի կարաց դէմ դնել Արտաշրի, որ որպէս թէ բոլոր ամրականներն, այսինքն ամուր տեղեր ապաւինողներն, իջուց բերդերէն, զՕտայ միայն չկարաց իջեցունել. վկայաբան մեր անտարակոյս չէր կրնար խորհել այս կէտը: Օտայ մը և Խոսրովիդուխտ մը հարկաւոր էին նմա, դարձին տեսարանին վրայ մէն մի իբրև կարևոր դեր խաղացող անձինք. Խոսրովիդուխտ՝ իբրև անմեղ կուսան պիտի ընդունէր զԳրիգոր բանտէն հանելու պատգամը, և Օտայ՝ պիտի հանէր զնա ի բանտէն:

«Բայց Արտաշրի լուեալ էր—կ'ըսէ Խորենացին յառաջ տանելով պատմութիւնը,—թէ ումն ի նախարարացն Հայոց առեալ յորդւոցն Խոսրովու՝ փախուցեալ ապրեցոյց: Եւ քննեալ թէ ո՞վ ոք նա իցէ՝ եղև վերահասու թէ նա է Արտաւազդ յազգէն Մանդակու-

նեաց. Հրամայեաց զամենայն ազգն ջնջել սատակմամբ։ Քանզի ի գաղթելն Հայոց յԱրտաշրէ՝ գաղթին և նոքա ընդ ցեղս այլոց նախարարացն. և ի նուաճելն Արտաշրի զայլսն՝ դառնան և նոքա և սատակին սրով ամենեքին։ Բայց կոյս մի գեղեցկադիտակ ի քերցն Արտաւազդայ գողացեալ Տաճատայ ուրումն, որ էր լեալ յազգէն Աշոցան, փախուցեալ ի Կեսարացւոց քաղաքին ապրեցուցանէր, ամուսնաւորեալ ընդ ինքեան վասն չքնաղագեղ կերպարանին»։

Ինչ որ ըսինք Խոսրովիդխտոյ և Օտայի համար՝ զնոյն պարտ է իմանալ Արտաւազդայ Մանդակունւոյ դայեկորդւոյն Տրդատայ, և Տաճատայ համար, որ եղած են կարևոր դեր խաղացող անձինք ի պատմութեան դարձին. Արտաւազդ՝ իբրև վկայ, թէ Տրդատ էր որդի թագաւորին Հայոց, և Տաճատ իբրև քեռայր Արտաւազդայ, բնակելով ի Կեսարիա ուր էր Գրիգոր՝ տեղեկանար պատմութեան նորա և որդւոց նորա, և իմացունէր ի ժամանակին Գրիգորի, թէ ո՛ւր կը գտնուէր Տրդատ, և Տրդատայ՝ թէ որո՛ց որդի էր Գրիգոր, և զորդւոց նորա տար տեղեկութիւն։

Խորենացին ՀԹ. գլխոյն մէջ, առնլով դարձեալ Փիրմիլիանոսէ՝ կը պատմէ Տրդատայ քաջութիւններն անիշխանութեան ժամանակ, այսինքն յառաջ քան զթագաւորել նորա։ Ըստ Խորենացւոյն՝ Տրդատ ուսեալ էր ի մանկութենէ ոչ միայն ձիավարութիւն և զինուորութիւն, այլ և էր երևելի ուժով բազկի, նման անուանի յոյն ըմբիշներու, յորոց զոմանս կը յիշէ յանուանէ, առնլով Եւսեբիոսէ։ Կը պատմէ նաև, թէ ինչպէս Տրդատ իւր հսկայական զօրութիւնը ցուցուց՝ Հռոմայեցի կայսերաց Կարոսի և Կարինոսի պատերազմներուն մէջ.—«Պատմէ—այսինքն Փիրմիլիանոս—զնահատակութեանցն Տրդատայ, նախ ի մանկութեանն յերիվար կամակար աշտանակեալ, և կորովի ձիավարեալ, և զէնս շարժեալ յաջողակաբար, և այլ պատերազմականս ուսանել ախորժակս. ապա ըստ Պեղոպոնեսացւոց մեհենական հրամանին Հիփիտեալ ի մրցանակս ագոնին առաւելեալ քան զԿղիտոստրատոս Հռոդացի, որ զվզէ և եթ կալեալ յաղթէր, և դարձեալ քան զԿերասոս արգիացի. զի նա զկճղակ եզին թափեաց, իսկ սա զերկուց ցլուց վայրենեաց միով ձեռամբ կալեալ զեղջերէն՝ թափեաց հանդերձ ընդվզեալ ջախջախմամբ։ Եւ ի ձիընթացս մեծի կրկէսին կառավարել կամեցեալ՝ ի հմտութենէ հակառակորդին ոստուցեալ յերկիր անկաւ, և բուռն հարեալ արգել զկառսն, ընդ որ ամենեքին զարմացան։ Եւ ի պատերազմելն Պրոբոսի ընդ Գութս՝ եղև սով սաստիկ. և յոչ գտելոց շտեմարանաց՝ յարեան զօրքն ի վերայ և սպանին զնա, նոյնպէս և ի վերայ ամենայն իշխանացն դիմեցին։ Իսկ Տրդատ միայն ընդդէմ

կացեալ՝ չեթող զոք մտանել յապարանսն Լիկիանոսի, առ որում ինքն Տրդատ էր։

«Բայց Կարոս հանդերձ որդւովն Կարինեաւ և Նումերիանոսիւ թագաւորեաց, և զօրաժողով եղեալ՝ ետ ճակատ ընդդէմ Պարսից արքային, և յաղթեալ դարձաւ ի Հռոմ։ Վասնորոյ բազում ազգս ի ստասրութիւն կալեալ Արտաշրի, թիկունս արարեալ զանտպատն Տաճկաստանի՝ դարձեալ ետ ճակատ ընդ զօրս Հռոմայեցւոց կրկին, աստի և անտի Եփրատու, յորմէ սպանաւ Կարոս ի Ցուինովն։ Նոյնպէս և Կարինոս որ ի վերայ Կոռնակայ չոգաւ յանտպատ, ընդ որում և Տրդատ, և սատակեցաւ նա և զօրն, և մնացեալքն ի փախուստ դարձան։ Յորում և Տրդատայ վիրաւորեալ երիվարն՝ ոչ անճապարեաց ընդ փախստեայսն, այլ առեալ զզէնն իւր և զկազմած ձիոյն՝ ի լիւղ ընդ լայնատարած խորալատակն անցանէր ընդ Եփրատ ի բուն զօրսն իւրեանց, ուր Լիկիանոսն էր»։

Այս պատմութեան մէջ թո՛ղ որ Խորենացին կը շփոթէ զԿարոս ընդ Կարինոսի՝ Կոռնակն, զոր կը յիշէ իբրև պատմական անձն՝ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ, ինչպէս կը դիտէ Լանկլուա՝ յունարէն բառն Κεράυνος—կայծակն, որմէ սպանուած կարծուած է Կարոս։ Սամուէլ Անեցի իւր ժամանակագրութեան մէջ կը յօդէ ուրիշ առասպել Կոռնակայ վրայ։ Ահա Լանկլուայի դիտողութիւնը. «Սամուէլ Անեցի իւր ժամանակագրութեան մէջ կը պատմէ, թէ Կոռնակ, սպարապետ զօրուն մեծին Խոսրովու, հօր Տրդատայ, կը համարուի ապրած հարիւր վաթսուն տարի և պահած մինչև յիւր վերջին ժամն ականջները, մազերն, ակռաներն և երիտասարդութեան զօրութիւնը։ Սա սպանեց, կ'ըսէ, զԿարոս հանդերձ որդւովն Կարինոսիւ ի ճակատու ուրեք ընդ Պարսս, որոց կը հրամայէր Կոռնակ։ Այս պատմութիւնն է լոկ կեղծիք։ Կոռնակայ առասպելին առիթ տուած է սխալ մեկնութիւնն, զոր տուած են Հայք Կոռնակ բառին, որ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ թարգմանութիւն Կոռնակէս կամ Կառնաւնոս բառին, բառ աղաւաղեալ ի գրչաց փոխանակ քերաւնոսի, որ է կայծակն։ Ըստ պատմութեան՝ Կարոս արդարև մեռաւ կայծակնահար, երբ կը դնէր զիւր բանակն Տիգրիսի մօտ, իսկ Կարինոս սպանաւ ի կըռուի։ Այսպէս է գոնէ պատմութիւն հռոմայեցի պատմչաց (Վոպիսկոս, Եւտրոպիոս)։ Շփոթութիւնն որ կը տեսնուի ի պատմութեան Փիրմիլիանու ըստ Խորենացւոյն՝ այսպէս կը մեկնուի դիւրաւ» (Լանկլուա, Ժողովածոյք. Հտ. Բ. էջ 120, ծան. 5)։

Տրդատայ ուժին վրայ ոչ սակաւ բան կը պատմէ նաև Ագաթանգեղոս։ Ըստ Ագաթանգեղոսի՝ Լիկիանէս ընդ որում էր Տրդատ, ի գնալն զօրօք առ Դիոկղետիանոս՝ կը հասնի ի քաղաք մի որոյ

դրունք փակեալ էին, և էր կէս գիշեր։ Զինուորն կերակուրը պակսեցաւ, բայց քաղաքին պարիսպներէն ներս կը տեսնուէր համբար խոտոյ, այլ պարսպին բարձրութեան համար չէր հնար առնուլ։ Տրդատ անցնելով պարսպէն անդին՝ կը նետէ բանակին մէջ խոտերու դէզեր, նաև ոչ սակաւ էշ։ Լիկիանէս Տրդատայ այս զօրութիւնը տեսնելով՝ կը զարմանայ.—«Յայնմ ժամանակի թագաւորն (Դիոկղետիանոս) հրաման տայր հրովարտակս և դեսպանս առնել առ իշխանս և զօրս իւր, զի ուր և իցեն՝ առ նա հասանիցեն։... Առեալ և Լիկիանէ զբուն գունդն որ ընդ իւրով ձեռամբ էր՝ փութայր հասանել ի տեղի պատերազմին։ Եւ մինչդեռ գային գունդք զօրացն և Տրդատէս ընդ նմա՝ դէպ եղև նոցա գալ մտանել ի նեղագոյն տեղի մի յառուամէջս այգեստանեացն, ի փողոցամէջս համբարոցացն առ դրունս քաղաքին, և զդրունս քաղաքին աղխեալ էր, զի ժամ էր հասարակ գիշերոյ։ Իբրև ոչ գտաւ խոտ երիվարաց զօրուն բազմութեան՝ հայեցեալ տեսանէին ի զուարափակ քաղաքորմին, զի խոտահամբար մթերեալ էր. և ոչ ոք կարաց ձգել զձեռն իւր վասն տեղւոյն բարձրութեան։ Յայնժամ Տրդատէս ելեալ և իջեալ՝ հոսէր ընկենոյր բարդս բարդս ի մէջ զօրացն մինչ ի լիութիւն բաւականի. նաև զհամբարապանսն և բազում իշեան յայնկոյս որմոյն ընկենոյր ի մէջ զօրացն, և ինքն ելեալ իջանէր»։

Բայց քան զամենայն զարմանալին է մենամարտութիւնն Տրդատայ ընդ թագաւորին Գթաց. «Յաւուրս ժամանակացն այնոցիկ զօրաժողով լինէր իշխանն Գթաց տալ պատերազմ ընդ իշխանին Յունաց։ Պատգամս յղէր օրինակաւս այսուիկ. Ես, ասէ, ախոյեան ելանեմ քեզ ի մերոց աստի, և դու ինձ ի յունականաց այտի. եթէ ես զքեզ յաղթահարեցից՝ Յոյնք ինձ հնազանդեսցին ի ծառայութիւն. և եթէ դու ինձ յաղթեսցես՝ մերքս քեզ նուաճին և հնազանդին։... Իբրև զայս լուաւ թագաւորն Յունաց՝ երկեաւ... քանզի էր տկար յոսկերաց զօրութեամբ... և ոչ գիտէր զինչ տացէ բանիցն պատասխանի։... Ապա կաց պատմեաց թագաւորն իշխանացն զամենայն պատգամս թագաւորին Գթաց։ Խօսել սկսաւ Լիկիանէս ընդ արքային և ասէ. Մի ինչ զարհուրեսցի սիրտ տեառն իմոյ, զի գոյ աստ այր մի ի դրան քում, զի իրքդ այդ նովաւ վճարին, Տրդատէս, ի տոհմէ թագաւորին Հայոց աշխարհին։... Յայնժամ հրաման ետ, և ածին զՏրդատիոս յանդիման թագաւորին. ետուն կազմութիւն մարտի առ ի ժամ վաղուի զմիմեանս տեսանել պատերազմաւ։ Իսկ ի միւսում աւուրն ընդ այգն ընդ առաւօտն հրամայեաց արկանել ծիրանիս, և զորդարե-

ցին զՏրդատ ի զարդ կայսերական, արկեալ զնովաւ զնշան թագաւորութեանն. և ոչ ոք գիտէր վասն նորա. Հրաման ել ամենեցուն, թէ ինքն կայսրն իցէ։ Եւ նա առեալ զգունդն զօրաց բազմութեան՝ ի ձայն փողոյ տագնապաւ յառաջ մատուցանէր մինչև յանդիման թշնամեացն։ Իբրև յանդիման եղեն միմեանց կայսերականքն և թագաւորն՝ մտրակ ի կուշտ արարեալ երիվարացն ի միմեանս հասանէին. անդ յաղթահարէր կայսերակերպն զթագաւորն, ձերբակալ արարեալ յանդիման առաջի թագաւորին կացուցանէր»։

Ոչինչ ընդհատ քան զայս առասպելական է այն, զոր ըրաւ Տրդատ ըստ Ագաթանգեղոսի յետ դարձին իւրոյ, երբ կը շինուէին վկայարանք Հռիփսիմեանց։ Հրամանաւ Գրիգորի երթալով Մասեաց լեռն ի վեր իբրև եօթնօրեայ ճանապարհաւ՝ ութ մեծամեծ քարէ արձաններ, զորոց իւրաքանչիւրն հազիւ կրնային շարժել բազմութիւնք մարդկան՝ ուսին վրայ բառնալով բերաւ, իբրև փոխարէն կռուոյն զոր ըրած էր ընդ Հռիփսիմեայ.—«Եկն թագաւորն խնդրեաց հրաժեշտ ի սրբոյն Գրիգորէ. եօթնօրեայ ճանապարհ կալեալ ի վեր ի բարձր լեառն Մասիս, և անտի ի գլխոյ լեռնէն առեալ վէմս արաստոյս, անտաշս, անկոփս, յաղթս, ծանունս, երկայնս և ստուարս, մեծամեծս, որ զմի մի ոչ լինէր հնար թէև դիպելոյ բազմութեանց ի մարդկանէ զայն շարժել. արդ առեալ սկայազօրն հայկաբար զութ արձանսն ի վերայ իւրոց թիկանցն զայն դնէր, ստանձնեալ բերեալ ի վկայարան տաճարացն, իբրև փոխարէն անմիտ մարտին, զոր ընդ սրբոյն պատերազմեալ էր յիւրում սենեկին»։ Յիրաւի է ըսել՝ զոր Խորենացին ըսած է այլով առթիւ. «Ո՜հ, կարի է առասպելս, և առասպելաց առասպել»։

Ի հաստատութիւն Տրդատայ ուժոյն՝ Ագաթանգեղոս կը յիշէ հասարակաց զրոյց մի (եթէ է զրոյց և ոչ գիւտ նորին իսկ Ագաթանգեղոսի). որպէս թէ հասարակաց առակ էր—«Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն աւերեաց զթումբս գետոց, և ցամաքեցոյց իսկ ի սիգալ իւրում զյորձանս ծովուց»։ Ո՛րչափ հօկայազօր և դնեն՝ք զՏրդատ՝ չիք տարակոյս, թէ պատմուածներն ի Խորենացւոյն և Ագաթանգեղոսէ՝ քան զճշմարտութիւնն շատ աւելի են։ Վկայաբանութեան գլխաւոր նպատակն ի բարձրացուցանել այնչափ Տրդատայ ոյժն՝ էր անտարակոյս բարձրացունել Հռիփսիմէի յաղթութիւնը, որ չէր հնար այնպիսի ահագին ուժոյ դէմ՝ եթէ ոչ մատամբն Աստուծոյ։

Խորենացին, ըստ իւր վկայութեան (Գլ. ՀԵ.), Տրդատայ թագաւորութեան ժամանակին պատմութիւնը կ'առնու «ի յիշատակաց դիւանագիր մատենից Յունաց», և «ի համբաւուց արանց իմաստ-

նոց հնախօս սիրաբանից». սակայն չըսեր թէ ինչ էին այն «դիւանագիր մատեանք», և ո՛վ «արք իմաստունք և հնախօս սիրաբանք». —«Բայց որ ինչ և ի թագաւորութեանն Տրդատայ և յետ նորա՝ ոչ հեղգութեամբ և անզգուշաբար վրիպեալ, և ոչ կամաւոր սխալանօք ի սմա յարմարեալ բան, այլ որ ինչ ի յիշատակաց դիւանագիր մատենիցն Յունաց։ Իսկ ըստ նմանեացն ապա որ ինչ ի համբաւուց արանց իմաստնոց և հնախօս սիրաբանից ստուգապէս տեղեկացեալ՝ արդարապէս քեզ գրուցեցաք»։

Խորենացին ի վերնագրի Գ. գլխոյն կը յիշէ նոր աղբիւր, այսինքն զԹուղթն Արտիթէոսի ուրումն եպիսկոպոսի վասն ննդեան և վարուց Գրիգորի և որդւոց նորա, իբրև պատասխանի հարցման Մարկոսի ուրումն միայնաւորի։ Սակայն չըսեր, թէ ո՛վ էր այն Արտիթէոս։ Ագաթանգեղոս կը յիշէ Արտիթէս ոմն յորդւոց քրմաց, զորս Լուսաւորիչ կացոյց եպիսկոպոս այլևայլ կողմեր։ Ըստ հեղինակին պատմութեան հայերէն գպրութեան՝ այս Արտիթէս էր Խորենացւոյն Արտիթէոսն, որ որպէս թէ «Մարկոս անունով միայնակեցի մը խնդրանօք, որ Ագաթանգեղոսի կողմէն մանրամասնաբար ընդարձակուած և ընդունուած Լուսաւորչին վարուց պատմութիւնը շարադրեց նամակի ձևով, և իրմէն առած է Խորենացին՝ ինչ որ նոյն սրբոյն մանկութեան և երիտասարդութեանը վրայ կ'աւանդէ, ինչպէս անոր Տրդատայ ծառայութեան քով մտնելը»։ Ահա պատմութիւն Արտիթեայ. «Այր ոմն ի Պարսից, ոչ ի փոքունց և յաննշանից, որում անուն էր Բուրդար, գնացեալ անտի և եկեալ ի կողմանս Գամրաց՝ պանդխտեցաւ ի Կեսարիա։ Եւ առեալ կին ի հաւատացելոց, որում անուն Սոփի կոչիւր. քոյր ուրումն մեծատան որ Եւթաղիոս յորջորջէր, դարձաւ անդրէն գնալ յերկիրն Պարսից հանդերձ կնաւ իւրով. զորոյ զհետ հասեալ աներոյ նորա Եւթաղեայ՝ համոզեալ արգելոյր։ Որոյ հանդիպեալ ծննդեան մերոյ Լուսաւորչին՝ ըստ պատահման մտանէ սնուցանել զմանուկն. և ի հասանել աղետին՝ առեալ Եւթաղեայ զքոյր իւր և զայրն նորա հանդերձ մանկամբն՝ ի Կապադովկացւոց աշխարհն դառնայր»։

Պարսիկ ոմն, ոչ աննշան, գալով ի Կեսարիա՝ կ'առնու կին քրիստոնեայ, քոյր մեծատան ուրուք, և կը դառնայ երթալ յերկիր իւր։ Կնոջ եղբայրը կ'առնու յանձն նախ զատուիլ քրոջմէն, և ապա զղջալով՝ կը փութայ դարձուցանել զնա յետս։ Արդարև զարմանալի դիպուած։ Քան զայս զարմանալի.—կինն լինի «ըստ պատահման» սնուցիչ Գրիգորի. ապա ունէր ուրիշ տղայ մանուկ ի ստեան։ Նշանաւոր կին մը որ ունի մանուկ կաթնկեր՝ կ'առնու միւս ևս մանուկ կաթնկեր. մինչ Անակայ պէս Պարթև իշխանի կը պակսէր

դայեակ Հայոց մէջ։ Բայց Նախախնամութեան խորհուրդ կար գործին մէջ. քրիստոնեայ կին մը կեսարացի դայեակ մտնելու էր հեթանոս Պահլաւ մանկան, որպէս զի ի դիպել կոտորածին փախուցանէր զնա ի Կեսարիա ի մէջ քրիստոնէից, պատրաստել լուսաւորիչ Հայոց։ Ցիրաւի ուրեմն Խորենացին հիանալով կը գոչէ. «Այլ զայս ամենայն գործէ յառաջատեսութիւնն Աստուծոյ, որպէս կամք են իմոյս ասել բանի, յաղագս որ ի մեզ փրկութեան ճանապարհ։ Ապա թէ ոչ, որում յուսոյ ակն ունելոյ զմանուկ Պահլաւիկ ի Հռոմայեցւոց իշխանութեանն սնուցանէին և Քրիստոսի ընծայէին հաւատով»։ «Բայց յարբունս հասակի հասեալ մանկանն՝ փեսայացուցանէ հաւատացեալ ումն այր, որում անուն էր Դաւիթ, ի դուստր իւր Մարիամ, որ յետ երից ամաց երկուց որդւոց լինելոյ՝ ի կամաց երկոցունց մեկնեալ ի միմեանց զատչին։ Մարիամ հանդերձ մանկամբն կրտսերաւ ի վանս կանանց անկեալ կրօնաւորիւր»։ Կային ուրեմն յայնմ դարու կուսանաց վանք, ուր առնականայք ևս կ'ընդունուէին հանդերձ տղայ մանկամբք։ «Յարբունս հասեալ մանկանն՝ զհետ ընթանայ միայնաւորի մի, որում անուն էր Նիկոմաքոս, և նա առաքէ յանապատ։ Իսկ անդրանիկն առ դայեկաց մնացեալ, որ ապա աշխարհավարեալ ամուսնացաւ։ Բայց հայրն նոցին Գրիգոր անցեալ գնաց առ Տրդատ՝ զհայրենեացն հատուցանել պարտիս, կամ որպէս պարտ է ասել ճշմարտութեամբ՝ զառաքելութեան վիճակ մերոյ աշխարհիս և զքահանայութեանն հանդերձ մարտիրոսութեամբ վարժելով»։

Ագաթանգեղոս երիցուն Վրթանեսի համար ըսելով համառօտիւ, թէ «յաշխարհակեաց կեանս էր, ապա յաշտիճան պաշտաման եկաց երիցութեան»՝ երկրորդին, Ռստակեսի խստամբերութիւնը կը նկարագրէ երկար և մեծ գովեստիւ. «Ի մանկութենէ, կ'ըսէ, ըստ աստուածագործ ծառայութեան սնեալ էր. որ ի մենակեաց, լեռնակեաց կրօնս մտեալ էր, և բազում ազգի ազգի վշտակեցութիւն ըստ Աւետարանին կրեալ ամենայն կրթութեամբ, և ամենայն իրաց հոգևորաց զանձն տուեալ—մենաւորութեան, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակ կենաց, և արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց, և բազում անգամ զհեշտական հանգիստն գիշերաց, զհարկ քնոյ յոտնաւոր տքնութեան ի՝ թարթափ ական վճարելով, և զայս արարեալ ոչ սակաւ ժամանակս։ Եւ այսպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց կամայական քաջութեամբ տարեալ, և նովին լուսաւորեալ և՝ պայծառացեալ, և ծանօթական և հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ և ամենայն մարդկան»։

Ըստ Խորենացւոյն՝ ո՛չ Գրիգոր խնդրեց զնոսա, և ոչ նոքա զնա, ո՛չ միայն հալածանաց ժամանակ, այլև յետ փառաւորելոյ հօրն, վասն զի ոչ թէ պատիւ կը խնդրէին, այլ պատիւն զհետ նոցա կը վազէր.—«Արդարև, կ'ըսէ, հօր սքանչելւոյ որդիք զարմանալիք. զի ո՛չ նա խնդրեաց զորդիսն, յորժամ դարձաւ ընդ Տրդատայ, և ոչ նոքա չոգան առ նա. և այն դրեթէ վասն երկիւղի հալածանացն. բայց և ոչ ի քահանայանալն և ի փառաւորել հօրն երևեալ պերճացան նոքա, անսպառին և անանցականին միայն բակելով. որք ոչ զպատիւն յինքեանս ձգէին, այլ պատիւ զհետ նոցա ընթացաւ, որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»:

Արդարև, ըստ Ագաթանգեղոսի, այսպէս ակնարկէ նաև Խորենացին, ոչ ոք գիտէր, և ոչ իսկ Տրդատ, թէ Լուսաւորիչ ունէր որդիս. անագան ուրեմն իմացուեցաւ այս.—«Իբրև կարի կարօտեալ էր թագաւորն աշխարհաւն հանդերձ զնմանէ (զԳրիգորէ), զի ի մէջ նոցա բնակեսցէ՝ լուան յումանց ի տեղեկաց, որ գիտակ արարին զթագաւորն վասն սրբոյն Գրիգորի, զի յառաջ մինչդեռ ի մանկութեան տիսն՝ էր ամուսնացեալ և երկուս որդիս ստացեալ»: Ըստ Խորենացւոյն՝ այս տեղեկութիւնը տուող եղաւ Տաճատ, Աշոցան տէր, քեռայրն Արտաւազդայ Մանդակունւոյ.—«Սա (Տաճատ) էր որ յայտայսն զգացոյց աներոյն իւրոյ Արտաւազդայ, և նա արքայի, նախ՝ զԳրիգոր Անակայ լինել որդի, և ապա զկնի վասն որդւոցն Գրիգորի, որպէս հմուտ եղեալ ի Կեսարացւոց քաղաքին բնակելով»: Բայց Բուզանդ չգիտեր զայս, նա մանաւանդ ի սկզբանէ ընդ Լուսաւորչին գիտէ զորդիս նորա, մանաւանդ զԱրիստակէս.—«Կրտսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեան զամենայն աւուրս կենաց իւրոց մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ» (Բուզ. Գ. Բ.):

Պատմութիւն ծննդեան և վարուց Գրիգորի և որդւոց նորա, զոր կը բերէ Խորենացին որպէս թէ առնլով Արտիթեայ եպիսկոպոսի թուղթէն, և զոր կ'ակնարկէ միայն համառօտիւ Ագաթանգեղոս (Գ. և ԾԻԳ.)՝ է կատարեալ վկայաբանական, նորանշան դիպօք, ուստի և ըստ անաչառ օրինաց քննադատութեան չկրնար ընդունուիլ իբրև պատմական: Առ ի չգոյէ ժամանակակից պատմութեան Գրիգորի անձին վարուց վրայ՝ սաչափ միայն կը թուի հաւանական, թէ ինչպէս կապադովկացի անունն ևս Գրիգոր է բաւական ապացոյց՝ էր նա կապադովկացի, թերևս հովիւ. հայ քրիստոնէից ի կողմանէ Կեսարիոյ եկեղեցւոյն, որոյ թեմ էր Հայաստան, և յետ դարձին Հայոց՝ ի խնդրոյ Տրդատայ առաւ նոյն մայր եկեղեցւոյ կողմանէ Հայաստանեայց նորընծայ եկեղեցւոյն կատարեալ մետրապոլ-

*տական իրաւասութիւնը սա պայմանաւ, որ յաջորդք նորա առնուին ձեռնադրութիւնն ի Կեսարիոյ, և եղաւ իսկ այնպէս. քանզի գրեթէ բոլոր յաջորդք Լուսաւորչին մինչև ի մեծն Սահակ կ'երթային առնուլ կաթողիկոսութեան ձեռնադրութիւնն ի Կեսարիա։ Եթէ չհամարինք ևս Կեսարիոյ եկեղեցւոյն թուղթն (առ Ագաթանգեղոսի ԾԺԶ.), ուր յիշուած է այս պայմանն, ճշմարիտ՝ սակայն պայմանը ճշմարիտ է։ Ագաթանգեղոս, կամ մանաւանդ յօրինիչ այն մատենին, ո ոք և էր՝ կը գրէր գայս Ե. դարուն կիսուն, երբ այս պայմանին համար կը յուզուէր սաստիկ վէճ ի մէջ Հայոց և Յունաց առ Սահակաւ, որ աւրեց այս պայմանը, և այս պատճառաւ մետրապոլիտն Կեսարիոյ զատեց Յունաց բաժնին Հայերն յիրաւասութենէն Սահակայ, մինչև հարկ լինել այս վերջնոյն բողոքել ի Կոստանդնուպոլիս առ պատրիարքն և առ Անատոլիոս զօրավար։ Այս խնդրոյն վրայ խօսուած է այլուր։ (Տես և Խոր. Գ. ԾԵ, ԾԸ. և Բուզ. Ե. ԻԹ.)։*

*Ի լրումն վկայաբանական պատմութեան դարձին Հայոց՝ կը մնայ կէտ մի, այն է Լուսաւորչին և Հռիփսիմեանց նահատակութեան պատմութիւն։ Խորենացին, որ ոչ ժամանակակից էր և ոչ ականատես Հայոց դարձին, յիշելով միայն այն դարձին պատմական կամ իբր պատմական մասը՝ մնացելոց, այն է հրաշալի դիպաց համար, որովք լի է այն պատմութիւնն, կ'ուղարկէ զընթերցողս իւր Ագաթանգեղոսի իբրև ականատես վկայի, զոր և կը համարի քարտուղար Տրդատայ։ Այս էր հաւատք ոչ Խորենացւոյն միայն, այլև բոլոր ազգին մինչև մեր օրերը, և այս՝ ըստ բանից Ագաթանգեղոսի միայն, առանց ուրիշ ժամանակակից վկայութեան։ Ահա բանք Ագաթանգեղոսի. «Հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս ի քաղաքէ ի մեծն Հռոմայ, և վարժեալ հայրենի արուեստիւ հռոմարէն և յունարէն ուսեալ դպրութիւն, և ի վերայ այսոցիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ, քաջի առաքինւոյ ուժեղ և պատերազմող Տրդատայ,... ոչ ի հին համբաւուց տեղեկացեալ մատենագրել, այլ մեզէն իսկ եղեալ ականատես կերպարանաց, և առընթերակաց հոգևորական գործոցն, և լուսաւոր շնորհապատում վարդապետութեանն»։ Այս վկայութեան հակառակ, առանց երկբայութեան է այսօր, թէ Ագաթանգեղոսի ոչ միայն անունն է պիտակ, այլև գրեթէ բովանդակ մատեանն է լոկ զրոյց* (légende), *լի հրաշիւք և դիպօք, զորս չկրնար իբրև ճշմարիտ ընդունել արդի քննադատութիւնն։ Ահա՛ պատմութիւնն Ագաթանգեղոսի համառօտիւ.—*

*Տրդատ, յետ մենամարտութեան ընդ թագաւորին Գթաց և յաղթութեանն, առնլով ի վարձ Դիոկղետիանոսէ զիւր հայրենի*

թագաւորութիւնն՝ կու գայ ի Հայս, յեկեղեաց գաւառ, ի գիւղն Երիզայ, ուր էր մեհեան Անահտայ, և կը հրամայէ Գրիգորի թաւոստերէ պսակներ տանել նուէր Անահտայ։ Գրիգոր չառնուր յանձն։ Տրդատ, որպէս թէ չգիտնալով Գրիգորի քրիստոնէութիւնը՝ կ՚ըսէ. «Այսչափ ամք են զի յամենայն զօրութենէ քումմէ ծառայեցեր ինձ միամտութեամբ, և ես գոհ էի զվաստակոց քոց. ընդէր ոչ առնես զկամս իմ»։ Թէպէտ ըստ նորին իսկ Ագաթանգեղոսի՝ Տրդատ գիտէր Գրիգորի քրիստոնէութիւնը և վասն այսր տանջած ևս էր զնա կանխաւ բանտիւք և կապանօք.—«Իբրև տեղեկացաւ (Գրիգոր) ի դայեկէն իւրմէ հայրենի գործոցն որ եղեալ էին՝ ել և գնաց առ Տրդատիոս ըստ հեշտ պաշտաման. և թաքուցանէր զանձն և զայն ինչ ի վեր ոչ հանէր թէ ո՛յր, կամ ուստի՛ կամ ո՛րպէս, կամ զի՛որդ. զանձն ի ծառայութիւն տուեալ ի հնազանդութեան պաշտէր առաջի նորա։.. Իսկ իբրև զգացեալ Տրդատիոս վասն Գրիգորի, թէ քրիստոնէական պաշտամանն հաղորդ է՝ սկսեալ այնուհետև պատուհասակոծ առնէր զնա, և ազգի ազգի արհաւիրս արկանէր ի վերայ նորա. բազում անգամ ի բանտս և ի կապանս տանջանօք նեղէր զնա՝ թողուլ ի բաց լինել նմա յերկրպագութենէն Քրիստոսի, և հնազանդութիւն դառնալ նմա դիցն սնոտեաց և պղծութեան պաշտաման» (Ագ. Գ.)։ Զիարդ և իցէ՝ կը տրուին Գրիգորի անհնարին տանջանք, զորս Գաթըրճեան կը համառօտէ այսպէս. «դայլ ի բերան դնել և պնդել ի գելոցս պրկեալս առասանօք (զաւուրս 7). կախել գլխիվայր զմիոյ ոտանէն և ծեծել դալար բրօք ստէպ (զաւուրս 7). պնդել կոճեղօք զոլոքս ոտիցն, մինչև ի ծայրից մատանցն ցայտել արեան. հարկանել բևեռս երկաթիս ընդ ներբանսն և այնպէս զձեռանէ առեալ յայսկոյս յայնկոյս շրջեցուցանել. հարկանել զաչսն ուժգին և հանել կռուփս ի գլուխն. եդեալ զգլուխն ի մամուլս՝ ոլորել, և միանգամայն քացախ և աղ և բորակ փչել եղեգամբ ընդ ռնգունսն. անցուցեալ պարկ լի մոխրով ընդ գլուխն՝ կապել թուլագոյնս զպարանոցաւ, զի ի տալն և առնուլ շունչ՝ վտանգեսցի (զաւուրս 6). կախել գլխիվայր և ջուր եռացեալ ձագարաւ յորովայնն արկանել. քերել զկողս երկաթի քերչօք. տարածանել ի գետնի տատասկ երկաթի բազում և թաւալել ի վերայ, քարշել, շրջշրջել և թաղել ի տատասկի անդ. դնել կապիճս երկաթիս ի ծունկսն և վարել ուռունս ստուարս, բառնալ ի կախաղան (զաւուրս 3), և կապար հալեալ ջերմաջերմ հոսել զմարմնովքն»։ Արդարև տանջանք, յորոց ապրել անհնար էր. բայց և այնպէս Գրիգոր կը մնայ կենդանի։ Ի վախճանի իմանալով Տրդատ ի Տաճատայ քեռանէն Արտաւազդայ Մանդակունւոյ սպարապետին իւրոյ, թէ

Գրիգոր որդի էր Անակայ մահապարտի՝ կը նետէ զնա Արտաշատու վիրապը, որ էր գուբ մահապարտաց, ուր կը մնայ Գրիգոր իբրև հնգետասան ամ օձերու հետ, և կ'ապրի նկանակովն՝ զոր կին մի երկնաւոր տեսլեամբ օր ըստ օրէ բերելով կը նետէ գուբը։ Յետ այսորիկ Տրդատ, որպէս թէ մեծ յաղթութիւն կատարած էր՝ կը հանէ երկու հրովարտակ, ուր կը հրամայէ իւր իշխաններուն և կուսակալներուն՝ մահուամբ պատժել զքրիստոնեայս, կը պատուիրէ նաև իւր հպատակներուն մահու սպառնալեօք՝ մատնել այնպիսիներն իշխանութեան (Ագ. ԺԲ.)։ «Այսպէս, կ'ըսէ Գաթրըճեան, փակի առաջին վարագոյն դարձի Հայոց աշխարհին»։

Բայց յանկարծ հալածանաց մրրիկը կը բերէ ի Հայս Հռոմայեցւոց կողմէն խումբ մի կուսանաց, որ գալով գաղտ կը բնակէ «ի հնձանայարկս այգեստանւոյն», ի հիւսիսոյ արևելից Վաղարշապատու։ Այս կուսանաց մէջ, որոց գլխաւորին անունն էր Գայիանէ՝ կար կոյս մի գեղեցիկ յոյժ, Հռիփսիմէ անուն։ Ըստ Ագաթանգեղոսի՝ կը թուի թէ այս կուսանք էին քաջ արուեստագէտ և ունէին գործարան. քանզի մին ի նոցանէ «ունէր արուեստ ապակագործութեան, առնել ուլունս ապակեղէնս», և այսու կը հայթայթէին իրենց օրական պարէնը։ Այնչափ բազմութեան կանանց գալուստը մայրաքաղաքին մօտ չկարէր մնալ զանխուլ. ուստի հռչակուեցաւ իսկոյն, մանաւանդ չքնաղ գեղեցկութիւնն Հռիփսիմեայ, զոր բերել կու տայ թագաւորն «բռնաբար, մերթ վերամբարձ, մերթ ի քարշ, յապարանս թագաւորին ի սենեակն արքունի»։ Հոս չմոռնանք զարմանալի նշան մը, զոր կը պատմէ Ագաթանգեղոս։ Պարկեշտազեղ կուսանք տեսնելով այս բռնութիւնը, գիտնալով ևս թագաւորին վաւաշոտ նպատակը՝ կ'սկսին աղօթել ջերմ եռանդեամբ, և լինի որոտումն այնպէս սաստիկ, մինչև, կ'ըսէ հաւատարիմ պատմիչն, «թմբրեալ լինէին մարդիկ յահէ անտի, և բազմաց ընդոստուցեալ անդուշեալ բազում երիվարք հեծելոց յահէ անտի՝ ըզբազումս ընկեցեալ և զբազումս առաթուր հարեալ սատակէին»։

Երկիցս կը փորձէ թագաւորն մերձենալ Հռիփսիմեայ, կռուելով մի անգամ եօթն ժամ, և երկրորդին՝ երեք ժամ. բայց կոյսն զօրացեալ յԱստուածուստ՝ կը յաղթէ թագաւորին, և թողլով զն մերկ կողոպուտ թագաւորական հանդերձէն և նշաններէն, և բանալով դուռը և ճեղքելով ամբոխը՝ կու գայ իւր ընկերներուն. և մինչդեռ կ'աղօթէր՝ կը հասնի դահճապետն գիշերայն բազմութեամբ դահճաց։ Նախ լեզուն կը կտրեն, յետոյ պրկելով ցիցերու՝ կը խարովեն մարմինը կանթեղօք, դուրս կը թափեն փորոտին, և մինչ կենդանի էր տակաւին՝ կը փորեն աչուըներն և անդամ անդամ կը

յօշեն։ Գրեթէ նոյնօրինակ կոտամահ կ՚սպանուի Գայիանէ ուրիշ ընկերներով։ Բոլոր խումբն, էր ըստ Ագաթանգեղոսի, աւելի քան եօթանասուն մարդ, յորոց երեսուն և եօթը միայն սպանուեցան. մնացելոց համար վկայաբանն մեր չըսեր թէ ինչ եղան։ Երկուց համար միայն, Նունեայ և Մանեայ, այսչափ ինչ գիտենք ի Խորենացւոյն, թէ Նունէ երթալով ի Վիրս՝ եղաւ առաքեալ նոցա, զորոյ հրաշալի պատմութիւնն ունի Խորենացւոյն Բ. դպրութեան ՁԶ գլուխն. իսկ Մանէ չկրնալով հասնել իւր ընկերներուն ի փախստեան՝ կը մնայ Դարանաղեաց լեռներուն մէջ յայրի, որ յետոյ կոչուեցաւ, ըստ Խորենացւոյն, յանուն նորա Մանեայ այր, ուր կ՚ըսուի թէ առանձնացաւ Լուսաւորիչն մեր մինչև ի մահ իւր։ Զայսմանէ խօսուած է այլուր։

Տրդատ տկար աղջկանէ մը յաղթուելու ամօթէն, թերևս նաև, եթէ ճշմարիտ է պատմութիւնն, ի սիրոյն առ Հռիփսիմէ,—«սիրտ հատեալ զհետ՝ կ՚ըսէր, անմռաց ի մտացս չանկանի»,—«ընկղմեալ ի խոր տրտմութիւն», մինչ կամէր ելանել յորս՝ յանկարծ կը հասնի պատուհաս Աստուծմէ. Թագաւորն փոխուելով ի խոզ՝ կ՚երթայ խոտաճարակ լինել անտառներու մէջ խոզերու հետ, և բոլոր բնակիչք քաղաքին կ՚այսահարին։ Խոսրովիդուխտ, քոյր Թագաւորին հնգիցս կը տեսնէ տեսիլ, որ կը պատուիրէր սպառնալեօք՝ հանել զԳրիգոր վիրապէն։ Գրիգոր վիրապէն հանուելով կը բժշկէ այսահարներն. կու գայ նաև Տրդատ խոզացեալ կերպարանօքն։ Թէ Ագաթանգեղոս նկարագրապէս կ՚առնու Տրդատայ ի խոզ փոխուիլն՝ յայտնի է սա նկարագրէն. «Էր, ասէ, նա փոխեալ ի կերպարանս աղբևայոյզ խոզաց. քանզի Թաւացեալ էին առհասարակ ամենայն մարմինքն, և ընդ անդամս ոսկերացն բուսեալ էր խոզանստև իբրև մեծամեծ վարազաց վայրենեաց. և եղնգունք ծայրից մատանցն ոտիցն և ձեռացն կճղակեալք էին իբրև զգետնաբիր արմատակեր կնճթացն։ Նա և պատկեր երեսացն դիմացն շրջեալ էր ի պատկեր և ի կնճիթ գռճանացն յեղեգան բնակելոց... մեծաձայն ճչել գնչել, հնչել, բոխոհելով փրփրացեալ, դիզեալ զկնճթակերպ երեսօքն, լեալ ի նմանութիւն չորքոտանւոյ, ընթացեալ յեղեգան բնակերամ գազանացն ի միջոյ՝ հասանէր յայն տեղին»։ Պահոց վաթսուն և վեց օրերը, զորս սահմանած էր Լուսաւորիչ՝ կը մնայ այնպէս Թագաւորն, «ձորձապատեալ պատատեալ ի մէջ բազմամբոխ աշխարհաժողով հրապարակացն»։ Ագաթանգեղոս այս նկարագիրը կ՚ընէ երիցս։ Յետ ոչ սակաւ աւուրց, այսինքն յետ որոյ շինեցան վկայարանք Հռիփսիմեանց և զետեղեցան մարմինք նոցա յարկեղս՝ աղօթիւք Գրիգորի բժշկուելով Թագաւորն՝ կ՚առնու մատաղ մանկան մարմին.—

«Երանելին Գրիգոր մեծաւ աղօթիւք և պաղատանօք խնդրէր ուժգին վասն բժշկութեան թագաւորին. յանկարծակի հարեալ գդողման՝ զխորխն խոզի արտաքոյ մարմնոյն ի բաց ընկենոյր, ժանդատեսիլ ժանեօքն և կնճթադէմ երեսօքն հանդերձ. խոզանացեալ մազովն թաւութեամբ զխորխացեալ կաշին ի բաց ընկենոյր. և դէմք երեսացն դարձան յիւր կերպարանն. և մարմինն փափկացեալ մատաղացեալ լինէր իբրև զառօրեայ մանկան ծնելոյ. և ողջանդամ մարմնովքն ամենևին բժշկեցաւ»։

Յետ այսորիկ Գրիգոր աջակցութեամբ Տրդատայ կ՚սկսի կործանել ջնջել հեթանոսական պաշտամանց տեղերը, բայց դարձեալ սքանչելեօք, այսինքն խաչին նշանաւ միայն փայտակերտ շինուածք կ՚այրին, քարաշէնքն ի հիմանց շարժելով կը տապալին, և որ աւելին է՝ դևք ի նմանութիւն առնևձիոյ մկնդաւոր, սաղաւոր, նիզակօք և նշանօք ի զէն և ի զարդ վառեալ՝ մեծագոչ աղաղակաւ կը կռուին, վերուստ ի վայր շինուածներէն քարեր և նետեր տեղալով։ Շատ մեհեաններ այսպէս կործանելէն ետքը՝ Տրդատ բազմութեամբ նախարարաց կը ղրկէ զԳրիգոր ի Կեսարիա՝ ձեռնադրել հովիւ Հայոց։ Ի դարձին կը կործանեն ուրիշ մեհեաններ. Նշանաւոր է մանաւանդ կործանումն Վահէվահեան մեհենին յԱշտիշատ։ Խաչանիշ փայտէն, զոր Գրիգոր ունէր ի ձեռին՝ ելաւ հողմ սաստիկ և տապալեց շինուածն, ուր նախ շինուեցան եկեղեցի և վկայարանք, մկրտուեցաւ Տրդատ ընտանեօք և ուրիշ անթիւ մարդիկ։ Հոս դարձեալ Ագաթանգեղոս կը պատմէ սքանչելիս։ Երբ թագաւորն և բազմութիւնք մարդկան իջան յԵփրատ գետ մկրտել՝ «զտեղի առեալ ջուրք գետոյն անդրէն դարձան ընդ կրունկն. և լոյս սաստիկ երևեալ ի նմանութիւն սեան լուսաւորի՝ կայր ի վերայ ջուրց գետոյն, և ի վերայ նորա նմանութիւն տէրունական խաչին. և այնչափ ծագեաց՝ մինչև զճառագայթս արեգականն նուազեցուցանէր։ Եւ իւղն օծութեան զոր արկանէր Գրիգորիոս ի վերայ մարդկանն՝ շրջան առեալ ի մէջ գետոյն շուրջ զմարդկաւն խաղայր»։ Եօթն օրուան մէջ, եթէ պարտ է հաւատալ Ագաթանգեղոսի՝ աւելի քան չորս միլիոն մարդ մկրտուեցաւ։ Դպրոցներ հաստատուեցան յուսումն դպրութեան, մանաւանդ քրմաց համար, յորոց բազումք կարգեցան հովիւ այլևայլ տեղեր։

Գալով քարոզութեանն՝ Ագաթանգեղոս կարի իմն կ՚ընդարձակէ զայս, որպէս թէ յարևմտից յարևելս, ի հիւսիսոյ ի հարաւ բոլոր Հայաստան ընկալաւ քրիստոնէութիւնը.—«Ընդ ամենայն երկիրն Հայոց, ի ծագաց մինչև ի ծագս ձգէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն և աւետարանութեանն. ի Սատաղացւոց քաղաքէն

մինչև առ աշխարհաւն Խաղտեաց, մինչև առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահմանս Մասքթաց, մինչ ի դրունս Ալանաց, մինչև ի սահմանս Կասփից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց. և յԱմդացւոց քաղաքէն մինչև առ Մծբին քաղաքաւ քերէր առ սահմանօքն Ասորւոց, առ Նոր Շիրական երկրաւն, և առ Կորդւօք մինչև յամուր երկիրն Մարաց, մինչև առ տամբն Մահքրտան իշխանին, մինչև յԱտրպատական ձգէր տարածանէր զաւետարանու-թիւնն իւր»: Բայց այս ևս է աւելի. հաւանականագոյնն, մանաւանդ թէ ճշմարտագոյնն է այս. դարձն սկսաւ պալատէն. և ապա ըստ Սոզոմենոսի՝ թագաւորն հրամանօք կամ քարոզօք յօժարեցոյց զժողո-վուրդն ընդունել նոր վարդապետութիւնը, և չիք տարակոյս, թէ ընդունողք ևս, և այն՝ մեծամեծներէն՝ առ երկիւղի կամ ակնածու-թեան ընկալան: Ազգ մը, որ դարերով ծնեալ և սնեալ ի կռա-պաշտութեան, առանց ուսման և դպրութեան, մանաւանդ քրիստո-նէական ուսման՝ ըմբռնել անգամ չէր կարող Աւետարանին մա-քուր պատուէրները: Բանք Բուզանդայ, զոր ոմանք առ ատելու-թեան բսուած կը համարին՝ շատ ճշմարիտ են. «Ի վաղնջուց, ասէ, յորմէ հետէ առին նոքա զանուն քրիստոնէութեանն՝ լոկ միայն իբրև զկրօնս իմն մարդկութեան յանձինս իւրեանց և ոչ ջերմե-ռանդն ինչ հաւատովք ընկալան, այլ իբրև զմոլորութիւն իմն մարդկան ի հարկէ: Ոչ եթէ որպէս պարտն էր՝ գիտութեամբ, յուսով և հաւատով, բայց միայն սակաւ ինչ որք զհանգամանս գիտէին հել-լէն կամ ասորի դպրութեանց, որք էին հասու ինչ այնմ փոքր ի շատէ: Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին (ուսման Ս. գրոց) էին այլ խառնաղանճ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախա-րարացն կամ շինականութեանն, եթէ զցայգ և զցերեկ նստեալ վար-դապետացն և ըստ նմանութեան ամպոցն իբր զյորդահեղեղ ինչ անձրևաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի վերայ հոսէին՝ ոչ ոք ի նոցանէն և ոչ մի ոչ, և ոչ մի բան և ոչ կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ ինչ, և ոչ նշմարանս ինչ զոր լսէինն՝ և ոչ կարէին ունել ինչ ի մտի: Վասն զի միտք իւրեանց ընդ անպիտանս ընդ անօգուտս ևեթ զբօսեալ էին. զոր օրինակ մանկունք տղայք ընդ մանկութեանն և ընդ տղայութեանն խաղալիկ խանգարեալք, և զպիտոյիցն և զկարևորացն ոչինչ փոյթ արարեալ, սոյնպէս և դե-գերեալ մաշէին յանուղղայ կրթութիւն ընդ չքնոտի մտացն ի հնութիւն հեթանոսութեան սովորութեանց, և զիւրեանց երգս ա-ռասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք, և նմին հաւատացեալք, ի նոյն հանապազորդէին»: Գալով միւսանգամ Ագաթանգեղոսի պատմութեան, զոր իբրև գրոյց միայն բերինք համառօտիւ, թերի

չթողնելու համար մեր գործը՝ կ՚ըսենք թէ ըստ ամենայնի իբրև պատմութիւն ընդունել զայն ըստ սկզբան արդի քննադատութեան՝ անհնար է։ Զայս կը խոստովանի և Գաթըրճեան.—

«Արդարև, կ՚ըսէ, եթէ ըստ սկզբանց եւրոպական բանադատութեան կամիցիմք վարել՝ Ա. Զմարթի զայն մատեան (զԱգաթանգեղոս) գրութիւն այնց ժամանակաց համարել յորս գրեալ ասէ զանձնէ ինքն մատեանն, այլ գործ վերջին կիսոյ դարուն չորրորդի (ըստ մեզ՝ առաջնոյ կիսոյ հինգերորդին). Բ. Ըստ նիւթոյն երևի 1. Սակաւ ինչ անտեղեկութիւն ոչ միայն քաղաքային հանգամանաց ժամանակին, զորմէ գրէ մատենագիրն, այլ և. եկեղեցական հնախօսութեան. 2. Աւելաբանութիւն (չափազանցութիւն) բազում ուրեք, և 3. Ցանկութիւն սաստիկ՝ պատմելոյ նորանշան զարմանալիս, մինչև թուել իմն, թէ ըստ Դանիելի գրոցն ձևեալ իցէ պատմութիւնն, որպիսի ինչ՝ կուիւ զգաստն Հռիփսիմեայ ընդ թագաւորին, բանալ զդուռն սենեկին և վազել արտաքս՝ յիշեցուցանեն զպատերազմն Շուշանայ ընդ ծերոցն լկտեաց, և զդուռնն պարտիզին և զայլն ամենայն. փոխել թագաւորին Հայոց ի խոզակերպ կերպարանս և անտառական բնակութիւնն՝ ակնարկէ զանասնակերպն լինել թագաւորին Բաբելացւոց և զբնակել յանտառս. արկանել Գրիգորի ի վիրապ մահապարտաց, կալ անվնաս, արկանել կնոջ միոյ ազգմամբ հրեշտակի նկանակ մի օր ըստ օրէ ի վիրապն, ելանել անյոյս՝ այս ամենայն յիշեցուցանէ զարկանել Դանիելի ի գուբն առիւծուց, զբերելն Ամբակումայ կերակուր օգնականութեամբ հրեշտակին, զմնալն անարատ և զելանել արտաքս յաղթող»։

«Որչափ և խիստ ևս այն բանադատութիւնն իցէ—կը յաւելու Գաթըրճեան—որ ցայս վայր յանդգնիցի յառաջել՝ սակայն աստի յառաջ չիշխէ խաղալ, այսինքն ընդ երկրորդական ինչ հանգամանաց զէական մասունս պատմութեան դարձին Հայոց ջնջել»։ (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Հտ. Բ. էջ 476)։

Գաթըրճեան չկամի, և չկարէր իսկ, իբրև արդարև երկիւղած եկեղեցական՝ «մանր կրկտել» այն բանադատութեան պատճառը, որ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ ի վեր քան զբնութիւն հանգամանք պատմութեան դարձին ըստ Ագաթանգեղոսի։ Արդարև եւրոպական բանադատութիւնն չջնջեր և չկարէ իսկ ջնջել այն դարձին երկրորդական հանգամանաց հետ էական մասերն, այսինքն ինչ որ իբրև ճշմարիտ պատմական՝ է բնական և ունի զիւր բնական պատճառ։ Ապաքէն քան զդարձն Հայոց նշանաւոր, նա գրեթէ անհնարին էր դարձն հռոմէական պետութեան, և քան զնա նշանաւոր՝ մուտն քրիստոնէութեան յաշխարհ. սակայն գիտենք թէ երկոքին ևս եղան

արգիւնք բնական պատճառաց։ Լսենք երևելի անձի մը, որ է պատմիչ և փիլիսոփայ միանգամայն։ «Ի հասանել հռոմէական պետութեան, ըստ քաղաքային և զինուորական կարգաց, ի ծագ անգր մեծութեան՝ հասեալ էր նա ըստ բարոյից ևս ի ծայր ապականութեան — էր լեալ անհնարին եպիկուրեան։ Զայն իմն ստէպ յեղյեղուին, թէ կեանք պարտին լինել իբրև տօն ուրախութեան, ուր առաքինութիւն չպարտի գտանել մուտ՝ բայց իբրև հաճեմ իմն հեշտութեան, և ժուժկալութիւն՝ իբրև հնարք յերկարելոյ զկեանս։ Սրահք խնջոյից պաղպաջունք յոսկւոյ և յականց պատուականաց, ծառայք զարգարեալք ի զարդ մեծաշուք, հրապոյրք կանանց լըկտեաց, բաղանիք շքեղք, տեսիլք թատերաց և կռիւք սուսերամարտից — այսոքիկ էին յայնժամ՝ զորս ազնուականութիւն իմն համարէր հռոմէական սնապարծութիւնն։ Յաղթողք աշխարհի ոչ այլում իմիք տանէին պաշտօն՝ բայց բռնութեան։ Բռնութիւնն բաւական էր տալ նոցա զամենայն ինչ, զոր շահեալ էր մարդկան ի վաղուց աշխատութեամբ և տուրևառիւք։ Ինչք և արարք գրաւեալ յարքունիս, և հարկք զորս հարկանէին ի նահանգաց նահանգաց՝ էին արգասիք յաջող պատերազմաց, և կայսրն գլխովին էր կենդանի նշանակ բռնութեան։ Պայծառութիւնն, որով թուէր փայլել հռոմէական ընկերութիւնն՝ շող իմն էր աղօտ, զոր արձակէր միջերկրական աշխարհն, հատեալ յանհնարին ապականութիւն։

«Ի միում ի նահանգաց պետութեանն յԱսիա, այն է յԱսորիս եկեալ էին ի մի վայր արք ոմանք ի խոնարհագոյն կարգէ, որոց կէտ նպատակի էր աստուածպաշտութիւն և ողորմածութիւն։ Վարդապետութիւն նոցա էր պատշաճագոյնն և համեմատագոյն ոգւոյ հասարակաց եղբայրութեան, որ ծնանէր ի հաւասարութենէ կենաց ազգաց նուաճելոց։ Զայն վարդապետութիւն ուսեալ էր նոցա ի Յիսուսէ։ Հիմն հաւատոյ հրէական ժողովրդեան էր յայնժամ հին ինչ աւանդութիւն ի Փրկիչ ոք, որ ծնանելոց էր ի միջի նոցա ի նորոգել զնախնի փառս ազգին։ Աշակերտք Յիսուսի հաւատացին, թէ նա էր Փրկիչն այն, օծեալն (Մեսիա), որում ակն ունէր ժողովուրդն ի վաղուց հետէ, մինչ քահանայք զվարդապետութիւն նորա համարեցան հակառակ շահուն իւրեանց, և ամբաստան եղեն զնմանէ յատենի հռոմայեցի դատաւորին, որ վասն շնորհս առնելոյ նոցա՝ մատնեաց զնա ակամայ ի մահ։

«Այլ պատուէրք մարդասիրութեան և եղբայրութեան, զորս ուսուցեալ էր նորա՝ կացին մնացին յետ այնորիկ։ Աշակերտք նորա փոխանակ ցրուելոյ՝ եկին կազմեցան ի մի խումբ։ Հիմն ընկերութեան նոցա էր հաւասարութիւն. իւրաքանչիւր տայր զինչս և

զշահ իւր ի հասարակաց պէտս։ Այրիք և որբք խնամէին, աղքատք և հիւանդք գտանէին դարմանս։ Այսպէս ծնաւ ընկերութիւն նոր և հզօր, այն է եկեղեցին. նոր՝ քանզի նման նորա չեղև երբէք ի հնումն. հզօր՝ քանզի առանձին եկեղեցիք, զատուցեալք ի սկզբանն՝ ոչինչ յամեցին գալ մտանել ի դաշն յօգուտ հասարակաց։ Այսպէս կազմեալ յերիւրեալ տարաւ քրիստոնէութիւնն ի գլուխ զամենայն զիւր աշխարհական յաղթութիւնսն։

«Որպէս ասացաք՝ զինուորական զօրութիւնն Հռոմայ եբեր խաղաղութիւն հասարակաց և ծնաւ ոգի եղբայրութեան յազգս նուաճեալս։ Ժամանակն էր յաջող յարագ ծաւալումն նորոց կարգաց քրիստոնէութեան ընդ բովանդակ պետութիւնն։ Սկիզբն առեալ յերկրէն Ասորւոց՝ տարածէր ուսումնն վաղվաղակի ի Փոքրն Ասիա, ի Կիպրոս, ի Յոյնս, յԻտալիա. եգիտ մուտ մինչև ի Գաղղիա և ի մեծն Բրիտանիա։ Քարոզք նորոյ վարդապետութեանն, որ սփռեցան միանգամայն ի կողմանս կողմանս՝ փութացուցին զտարածումն։ Եւ ոչ մին ի հին փիլիսոփայից աղանդոց արկ ի կիր այնպիսի հնարս։ Ըստ քաղաքական հանգամանաց ժամանակին՝ սահմանք հռոմէական պետութեանն եղեն սահմանք նորոյ վարդապետութեանն։ Հռոմ, ուր ասեն թէ մեռաւ Պետրոս, և ոչ Երուսաղէմ, ուր, առանց հակառակութեան, մեռեալ էր Փրկիչն՝ եղև մայրաքաղաք կրօնիցն։ Լաւագոյն էր առ այս կայսերական քաղաքն եօթնբլուրեան քան զբարձունսն Գեթսեմանւոյ և Գողգոթայի, թէպէտ նուիրական էին սոքա յիշատակօք քան զՀռոմ։

«Առաւել քան դարս երիս քրիստոնէութիւնն երևեցոյց զինքն նշանաւոր երիւք այսոքիւք—մեծարել զԱստուած, վարել սրբական վարս, լինել ողորմած առ ընկերն։ Յաւուրս անդ ակարութեան իւրոյ ոչ այլ ինչ արտր նա՝ բայց առնել եկամուտս (prosélyte) բանիւք հաւատութեան. այլ ըստ աճել նորա թուով և զօրութեամբ՝ սկսաւ յայտնել միտութիւն իմն ի քաղաքականութիւն, այն է ցանկալ կազմել տէրութիւն ի տէրութեան, պետութիւն ի պետութեան։ Այս էր ի հարկէ իմն արդիւնք զարգացման նորա։ Զմտաւածեալ կայսերաց, եթէ այս գնացք հակառակ էին գնացից կայսրութեանն՝ ձեռն արկին ջնջել զքրիստոնէութիւնն, որպէս պահանջէր իսկ ոգին զինուորական վարչութեան. որ ոչ գիտէր այլ հնարս՝ բաց ի բռնութենէ առ ունել զտէրութիւնն հոծ և պնդակազմ։

Ի ձմերան ամին 302, քրիստոնեայ զինուորք լեգէոնաց չառին յանձն խառնել զանձինս ի պաշտօն անդր հեթանոսութեան, կարգեալ ի վաղնջուց ժամանակաց ի սպառ գիցն։ Ապստամբութիւնն տարածեցաւ այնպէս արագ և էր այնպէս սաստիկ՝ մինչև Դիոկղե-

տիանու կայսեր ի խորհուրդ մտանել, զի գիտացէ թէ զինչ առնել պարտ էր։ Դիւրին է իմանալ զդժուարութիւն իրացն, եթէ արասցուք յուշ՝ թէ կինն և դուստրն Դիոկղետիանոսի էին քրիստոնեայ։ Կայսրն էր արդարև այր խորհրդական և անհնարին հմուտ քաղաքային իրաց։ Գիտաց եթէ հարկ ի վերայ կայր տէրութեանն լինել դիմակայ Նորոյ վարդապետութեանն. սակայն ետ պատուէր չհեղուլ բնաւ արիւն։ Բայց ո՞ կարող իցէ արգելուլ զկատաղութիւն խառնաղանճ մարդկան։ Նիկոմիդիա քանդեցաւ ի հիմանց, այլ փոխանակ ընդ այնր ապարանք կայսեր եղեն հրկէզ, և մին ի հրովարտակաց նորա պատառեցաւ անարգանօք։ Քրիստոնեայ սպայք որ էին ի զօրուն՝ ընկեցան ի պատուոյ. կոտորած էր ամենայն ուրեք, և բազումք վկայեցին։ Ցոյցք խռովութեանն էին այնպէս սաստիկ՝ մինչև կայսեր իսկ չմարթել ունել զառաջս հալածանացն։

«Անդէն յայտնի եղև, եթէ քրիստոնեայք էին մին ի հզօրագոյն մասանց տէրութեանն, և զայրագնեալ ընդ անհնարին անագորունութիւնն որում էին նշաւակ՝ եդեալ էր նոցա ի մտի այլ ոչ ևս ժուժկալել։ Յետ հրաժարելոյն Դիոկղետիանոսի յիշխանութենէն (305), Կոստանդիանոս, մին ի նախանձորդաց կայսերական գահուն, տեսեալ զօգուտն որ առաջի կայր նմա ի փոփոխութենէ գնացից առաջնոցն իւրոց՝ անց ի գլուխ քրիստոնեայ կողմանն։ Այսուհետ եգիտ նա յամենայն անկիւնս տէրութեանն համամիտս և համակամս իւր. անթիւ բազմութիւն արանց և կանանց ետուն նմա ձեռն մահու չափ։ Ած նա զիւրև զարսն բարեկիրս որ էին ի զօրուն։ Ի ճակատու ուրեք, զոր ետ նա մօտ ի Միղուեան կամուրջն (312)՝ յաղթութիւնն տարեալ ի գլուխ եցոյց, եթէ չէր վրիպեալ կայսրն ի խորհուրդս իւր։ Մահն Մաքսիմինեայ (313), և յետ սակաւ միոյ մահն Լիկինիայ (323) հարթեցին տապալեցին առաջի նորա զամենայն խոչ և զխութ։ Նստաւ Կոստանդիանոս մեծն յաթոռն կայսերական միահեծան իբրև առաջին քրիստոնեայ կայսր (324)» (Տրեբեր, Գուպարածք գիտութեան և կրօնից, գլ. Բ.)։

Այս համառօտ պատմութենէ քաջ մատենագրին յայտնի է, թէ պատճառն, որ տուաւ քրիստոնէութեան յաղթել՝ եղաւ տակաւ և մեղմով փոփոխումն մտաւոր և բարոյական հանգամանաց հռոմէական աշխարհին, և ոչ յանկարծական ինչ և անպատրաստ դիպուած և կամ ի վեր քան զբնութիւն գործուած։ Ընծայել այսպիսի դիպուածոց կամ գործուածոց զդարձ հռոմէական, ինչպէս նաև Հայոց աշխարհին ի քրիստոնէութիւն՝ չէ համեմատ փիլիսոփայական հետազօտութեանց, մինչ ի բովանդակութենէ գիտութեան ունինք փաստեր, թէ չկայ ի բնութեան յանկարծ ինչ և ի վեր քան զբնու-

թիւն (գերբնական), այնու զի տիեզերք, ինչպէս ի բնականս, նոյնպէս ի բարոյականս, են մեր առջև հիւսեալ տողեալ իբրև շար իմն պատճառաց և արդեանց, ուր չիք նշմարանք քակելոյ կամ խզելոյ․ և ոչ այն, որ կ'ըսուի հրաշից համար, թէ աստուածային տեսչութեան դիտաւորութենէն է կտրել անջատել երբեմն բնական պատճառաց և արդեանց հիւսուածն՝ ունի ի փորձոյ հաստատութիւն։ Բայց ինչ հարկ կայ մեզ մտնել աստուածաբանական վերացեալ պայքարներու․ արդիւնք իրաց են այնպէս յայտնի, որ եթէ յառաջ տանինք մեր քննութիւնն ի վեր կոյս նախ քան զծագումն քրիստոնէութեան՝ կը գտնենք զնոյն բնական ընթացս պատճառի և արդեանց։ Անտի յունական փիլիսոփայութիւնն կռուելով ընդդէմ ամօթալի բազմաստուածութեան, և աստի հրէական աստուածպաշտութիւնն մարգարէիւք ընդդէմ չոր և ցամաք պաշտամանց մովսիսականութեան՝ քրիստոնէութեամբ տուին իրարու համբոյր։ Այսպէս բնական պատճառք պատրաստեցին զհռոմէական աշխարհն յընդունելութիւն քրիստոնէութեան։ Չէ պարտ ուրեմն զարմանալ, թէ նոր վարդապետութիւնն, անհամեմատ սուրբ քան զհեթանոսականն, և բարձր քան զհրէականն, տարածեալ ընդ համօրէն հռոմէական պետութիւնն, ի հարաւոյ ի հիւսիս՝ Ափրիկական նահանգներէն և երջանիկ Արաբիոյ անապատէն (Պալմիւրա) մինչև ի Բրիտանական կղզիս, և յարևելից յարևմուտս՝ Ասորւոց երկրէն մինչև Գաղատական և Սպանիական նահանգներն, առնլով ի մէջ իւր զՄիջագետս և զՀայս իբրև ձեռակերտ (vassal) հռոմէական պետութեան՝—գրեթէ առնու զկայ առ սահմանօք այս վերջին երկու արևելեան աշխարհաց առաջակողման Ասիոյ։ Ո՞վ ըսաւ նմա․ «Մինչև ցայս վայր եկեսցես, և անդր մի անցանիցես»․ ո՞չ ապաքէն վասն զի ոչ-հռոմէական մասն աշխարհի չունէր այն պատրաստութիւնը զոր ունէր հռոմէականն։ Ո՞չ ապաքէն մասն երկրիս անդր քան զՏիգրիս անմասն է ցարդ քրիստոնէութեան օրհնութիւններէն, վասն զի չպատրաստուեցաւ նա յայն բնական ճանապարհաւ։

Այսչափ բաւական համարելով Հայոց դարձին պատճառներուն վրայ՝ գանք այժմ բուն պատմութեան հանգամանաց։ Ի պատմութեան դարձին Հայոց ստուգագոյն կէտն է ժամանակն, այն է սկիզբն Դ. դարուն, այնպէս որ չունինք ըսելու բան հակառակ այսմ։ Եւսեբիոս ժամանակակից, փոխանակ յիշելոյ զդարձն Հայոց՝ գիտէ զՀայս քրիստոնեայ անդէն իսկ ի սկզբան Դ. դարու, և ջերմագոյնս յաստուածպաշտութիւն, մինչև ի ստիպել զնոսա Մաքսիմինոսի Դայայ (306—313) ի կռապաշտութիւն՝ Հայք պատերազմեցան ընդ նմա և յաղթեցին․—«Պատերազմ եւս ի բռնաւորէ անտի

ընդ Հայոց գրգռեցաւ, ընդ արս՝ որ ի սկզբանէ բարեկամք և Նիզակակիցք Հռոմէական ժողովրդեանն էին։ Բայց քանզի և նոքա քրիստոնեայք էին և ջերմաջերմք ի բարեպաշտութիւնն որ առ Աստուածութիւնն է՝ ջանացաւ աստուածատեացն բռնաւոր բռնութեամբ ածել զնոսա ի պաշտօն կռոցն և դիւաց, և յայն սակս զբարեկամսն յաւելիս, զգաշնաւորսն ի թշնամիս գարձոյց»։ «և ինքն — յաւելու պատմագիրն — ի պատերազմի անդ ընդ Հայոց հանդերձ զօրուն իւրով գունակ գունակ նեղեալ վտանգեցաւ չարաչար» (Եւս. Եկ. պատմ. Դպր. Թ. գլ. Ը.)։ Եթէ ճշմարիտ է այս պատմութիւն (և է իսկ այնպէս առանց երկմտութեան), եթէ Հայք, ըստ արտաքին ժամանակակից պատմութեան իսկ (Դիոն. Կասս., Եւտրոպ., Բուզ.), յետ պարտութեանն Ներսեհի ի Գաղերիոսէ եղան միւսանգամ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց. եթէ թագաւորն, որ ապաքէն տրուեցաւ նոցա կամ հաստատուեցաւ (297) ի կողմանէ Հռոմայեցւոց (Դիոկղետիանոս), էր ըստ տոհմային աւանդութեան (Ագաթ.) Տրդատ՝ ապա պատերազմն այն, որ չկարէ լինել ոչ յառաջ և ոչ յետոյ քան զամն 311՝ եղաւ առ Տրդատաւ և իբր 5 կամ 6 ամօք յետոյ քան զդարձն առ Գրիգորիւ։ Թէպէտ այսպէս անագան ուրեմն մտաւ քրիստոնէութիւնն յարքունիս Հայոց հռոմէական ազդեցութեամբ՝ բուն մուտ նորա սակայն կը թուի լեալ հին, ոչ հեռի ժամանակաւ ի սկզբանէ անտի քրիստոնէութեան, ինչպէս կ'ակնարկէ ասորական աւանդութիւնն զարձին Աբգարու Ուշամայ (Ղապուպնա պէն Էպէտ Տառատաի, — Ղերուբնա որդի Ափշադարայ՝ ըստ Խորենացւոյն), թէպէտ ոչ վաւերական։

Գանք միւսանգամ առ Տրդատ։ Խնդիր է, թէ որպիսի առթիւ և յումմէ եղաւ թելադրութիւնն ի նպաստ քրիստոնէութեան ի միտս նախընծայ թագաւորին, որ, գէթ ըստ ազգային աւանդութեան (Ագաթ.), անհնարին գոռոզ և արբեալ ոգւով Դիոկղետիանու, Գաղերեայ և Լիկինեայ, ոխերիմ թշնամեաց քրիստոնէութեան՝ էր ի սկզբան, ինչպէս կարի հաւանական է՝ հալածիչ սաստիկ։ Ըստ Խորենացւոյն, և չէ մերժելի, թելադրութիւնն այն ծնաւ ի բարեկամութենէն Տրդատայ ընդ Կոստանդիանոսի ի հարսանիս սորա ընդ Մաքսիմինեայ դստեր Դիոկղետիանոսի։ — «Ընդ նոյն աւուրս լինին հարսանիք Մաքսիմինեայ դստեր Դիոկղետիանոսի ի Նիկոմիդայ, փեսայանալով Կոստանդիանոսի Կեսարու, որդւոյ Կոստայ թագաւորին Հռոմայ, որ (Կոստանդիանոս) չէր ի դստերէն Մաքսիմիանոսի, այլ Հեղինեայ պոռնկէ ծնեալ։ Այս Կոստանդիանոս բարեկամացեալ ի հարսանիսն ընդ Տրդատայ մեր թագաւորի» (Խոր. Բ. ՁԳ.)։ Այս ակնարկութիւն Խորենացւոյն է անգին, միայն սխալ է պատմու-

թիւնն. Հարսանիքն որ եղաւ 307, մարտ 31, էր Փաւստայ դըստեր Մաքսիմիանոսի, որ հանդերձ օգոստականութեան պատուով տուաւ նաև զդուստր իւր Փաւստա ի կնութիւն Կոստանդիանոսի, շահելու համար զնա։ (Տես Գաթըրճ. Պատմ. տիեզ. Հտ. Բ. էջ 192)։ Չէ անհաւանական, թէ Տրդատ գնաց առ նոր կայսրն Կոստանդիանոս, և թելադրեցաւ ի նմանէ ընել զքրիստոնէութիւնն տիրող կրօնք երկրին, ինչպէս ինքն ըրած էր կամ ունէր ի մտի ընել։ Չէ նաև անդէպ հաւատալ, թէ նահատակութիւնք Գրիգորի և աղիողորմ մահ Հռիփսիմեանց, զորս ետ սպանանել (305) Տրդատ յանկարծ իմն ցասմամբ, ընդ որ ստրջացաւ յետոյ (Ագաթ.)—պատմութիւնք որ չեն առանց հիման—արդէն պատրաստած էին զՏրդատ մեծ իմն փոփոխութեան (ինչպէս հալածանք անմեղ աշակերտացն Յիսուսի և մահն Ստեփանոսի՝ զառաքեալն հեթանոսաց. Րընան, Ս. Պօղոս) և յաւելին բարոյական զօրութիւն ի քաղաքականն։

Թելադրութիւնն ի տեսութենէն Տրդատայ ընդ Կոստանդիանոսի, (եթէ ակնարկութիւն մեր է ճշմարիտ), չկարէր գալ յարդիւնս՝ բայց մեղմով և ի ստիպելոյ ժամանակին։ «Փոփոխութիւնք ի լաւ անդր որ թուին պայթել յանկարծ՝ պատրաստին ի վաղուց, մինչև լինել արդեամբ կարևոր»։ Զիարդ և իցէ՝ ամն 306, յորում ընտրեցաւ Կոստանդիանոս ի զօրուէն Աւգոստոս՝ ըստ մերձաւորագոյն հաշուոյ եղաւ տարին՝ որ արկ զՀայս ի գոգ անդր քրիստոնէական ընկերութեան։ Տրդատ արքունեօքն եղաւ քրիստոնեայ, ոչ ըստ աշխարհի միայն, այլև ըստ հոգւոյ։ Պատմութիւն վարուց և գործոց սքանչելի թագաւորին, թէպէտ մեծաւ մասամբ վկայաբանական կամ զրոյց՝ քան զբաւականն յայտնի է ի ցուցանել զհոգևոր հանգամանս այն մեծ փոփոխութեան։ Ո՞չ ապաքէն քան զանհեդեդ սքանչելիս անուանեալ ատենադպրին Տրդատայ (Ագաթանգեղոս) սքանչելագոյն է և հաւանեցուցիչ պատմութիւն բնական պատճառաց և արդեանց զոր բերինք՝ ի գովեստ փառաց Աւետարանին։

Թող ըստ ոգւոյ իննևտասներորդ դարուն, որ այնպէս դժկամակ է ընդունել սքանչելիս՝ զ'ի վեր քան զբնութիւն պայման պատմութեանն իջեցուցանենք ի լոկ բնական։ Թող Գրիգոր—փոխանակ լինելոյ, իբրև գաղտնի իմն խորհրդով, որդի Անակայ ուրումն Պարթևի, յղացեալ ի տեղւոջ վկայութեան առաքելոյն Թադէի առ առնուլ զոգի նորա (Խոր.), և ապա մտեալ ի սպասաւորութիւն Տրդատայ ի հատուցանել զպարտս սպանութեան հօրն (Անդ, և առ Ագաթ.)—լիցի ի ծնէ Կապադովկացի (ինչպէս կապադովկական անունն իսկ կը յայտնէ), պաշտօնեայ միոյ ի գլխաւոր եկեղեցեաց

Հայոց ընդ իշխանութեամբ եկեղեցւոյն Կեսարիոյ. տանջանաց թիւը և տեսակներն, որ կուտակութիւն իմն են սքանչելեաց՝ իջեցունենք ի լոկ հալածումն. Գրիգորի բազմամեայ բնակութիւնն յօձաբնակ վիրապին՝ ի լոկ բանտարկութիւն. Հռիփսիմեանց, ոչ այնպէս բազմաց, այլ սակաւուց գալուստն ի Հռոմայ՝ իջեցունենք ի փախուստ ի փոքուէն Ասիոյ յերեսաց հալածանաց ուրումն ի բռնաւոր կայսերաց, որ դարանակալ էին անմեղութեան կանանց, և զբրապանումն նոցա՝ ոչ այնպէս կոտանօք, այլ յանկարծ ցասմանէ թագաւորին. զաստուածահարուածսն Սոզոմենոսի, զորոց ոչինչ գիտէ Եւսեբիոս, հնագոյն քան զնա և ժամանակակից՝ իջեցունենք ի լոկ հիւանդութիւն, ըստ նամակին Արտաշրի առ Խորենացւոյն (Խոր. Գ. ԾԱ.), ծագեալ ի տարփանաց, ինչպէս կ'ըսէ ինքն իսկ թագաւորն ըստ վկայութեան կարծեցեալ ատենադպրին իւրոյ, ի յիշելն զչքնաղագեղն Հռիփսիմէ, սպանեալ յիւրմէ—«Սիրտ հատեալ զհետ անմոռաց ի մտացս չանկանի». և զբուն պատճառ դարձին, փոխանակ ընծայելոյ խոզակերպն լինելոյ թագաւորին, ինչպէս ակնարկեցինք՝ ընծայենք հռոմէական քաղաքականութեան, որ ստիպուեցաւ ընել զքրիստոնէութիւնն հաւասարապատիւ հեթանոսութեան, մանաւանդ թէ մեծարոյ քան զնա։ Այս ամէնն արդարև կը փոխէ պատմութեան ձևն, այլ ոչ իրաց էութիւնը։ Որ ի վեր քան զբնականն էր՝ լինի բնական, հանդերձ այնու և բանաւոր։

Չէ իրաւացի՝ անհաւատութեան բիծ դնել փիլիսոփայական հետազօտութեան՝ վասն զի չընդունիր դարձին պատմութիւնը իւր վիպասանական ձևով։ Այնու զի կ'ընդունի զդէպսն՝ կը ցուցնէ թէ չէ անհաւատ, և զի կ'ընդունի առանց վիպասանական ձևոյն՝ կը ցուցնէ թէ չէ դիւրահաւան։ «Credo quia absurdum» Օգոստինոսի՝ չէ ի պայմանաց գիտութեան։ Վասն մեր ճշմարիտ պատմութիւն է՝ թէ քրիստոնէութիւնը գտաւ մուտ ի Հայս, իբրև հզօր ազդեցութիւն, անդէն իսկ յառաջնում դարու, և եղաւ կրօնք ազգին յետ իբր 300 ամաց, իբրև քաղաքական հարկ որ արդիւնք էր այն ազդեցութեան. ըստ ձևոյն՝ չէ փոյթ մեզ, որ իբրև ի չափ հատեալ կը խորհինք, և ոչ իսկ փոյթ է մեզ զնոցունց, որ որթոդոքսութեան կերպարանօք կամին տալ մեզ ուտել ընդ պտղոյն և զկեղևն, զդժուարահալն, մանաւանդ թէ զանհալն ստամոքսաց իննևտասներորդ դարու։

Յա՛ր կողմն և դարձուցնենք զելս հետազօտութեան մերոյ՝ յետ մերկանալոյ զաւանդութիւնն ի վիպասանական ձևոյն, զոր հարկ էր նմա առնուլ ի սկզբան ըստ ոգւոյ ժամանակին՝ կայ և մնայ հաւաստի, թէ մեծ իմն փոփոխութիւն եղաւ յազգին առ Գրիգո-

րիւ։ Բայց առ Գրիգորիւ դարձն՝ ունի զիւր նախն։ Ըսինք վերագոյնն, թէ մեծամեծ փոփոխութիւնք ի լաւ անդր որ յանկարծ կը թուին գալ յորդիւնս՝ չեն առանց յառաջագոյն երկար պատրաստութեան։ Զնոյն պարտ է իմանալ զփոփոխութենէն զորմէ բանքս են, եթէ չվկայէր ևս պատմութիւնն։ Սակայն պատմութիւնն, ևս և տոհմայինն, կը մատուցանէ մեզ առ այս առատ նիւթ։ Ասորւոց երկիրն հանդերձ Պաղեստինաւ էր այնպէս գիրկընդխառն ընդ մերումն՝ որ չէր մարթ այնպիսւոյ մեծի փոփոխութեան (որպիսի էր քրիստոնէութիւնն և որոյ ասպարէզ եղան անդէն իսկ ի սկզբան այն երկու սեմական աշխարհք, Ասորիք և Պաղեստին), չզօրծել զիւր ազդեցութիւնն եա ընդ եա ի դրացին նոցա, ի մերն։

Ցընթեռնուլ ուրուք զԱգաթանգեղոս՝ կը թուի կարծել զառաջինն, թէ առ Գրիգորիւ եղաւ այն փոփոխումն. այլ ի մէջ կը մտնէ Բուզանդ իւր անպաճոյճ լեզուաւ։ Ոչ միայն իբրև երեքհարիւր ամօք յառաջ կը տանի նա զսկիզբն դարձին, այլև գրուած էր, կ՚ըսէ, այնր պատմութիւն յառաջ քան զԳրիգորին.—«Ի քարոզութենէն Թադէոսի առաքելոյ և ի նորուն յելից և ի մարտիրոսութենէն մինչև ի կատարումն վարդապետութեանն Գրիգորի և իւրոյ հանգստեանն... այն ամենայն ի ձեռն այլոց գրեցան» (Բուզ. Գ. Ա.)։ Ապաքէն գրեցան այնու վիպասանական (զրուցական, légendaire) ձևով որով Գրիգորին, սակայն գրեցան։

Առ Տրդատաւ, նախ քան զհրապարակաւ դարձն հանդերձ աբքունեօք ըստ հռոմէական օրինակին՝ կային ապաքէն ի Հայս, մանաւանդ յարևմտեան մասին, քրիստոնեայ եկեղեցիք այնպէս բազում որպէս ի հռոմէական պետութեան առ Կոստանդիանոսիւ, թէպէտ և ընդ հալածանօք։ Վերագոյնն յիշեցինք Եւսեբեայ վկայութիւնն զպատերազմէն Հայոց ընդդէմ Մաքսիմինոսի յամին իբր 311, ոչինչ աւելի քան 5 կամ 6 ամօք յետոյ քան զդարձն առ Գրիգորիւ։ Պատերազմել Հայոց (որ այն ինչ պարապ առեալ էին Ներսեհի պատերազմներէն 297) ընդ Մաքսիմինոսի և վտանգել զզօրս նորա չարաչար՝ չէր դիւրին ինչ և ոչ հնար դոյզն զօրութեամբ։ Որչափ և մեծ համարինք զքաջութիւնն և զօրութիւն Տրդատայ՝ հարկ էր նմա գումարել ի մի վայր զբովանդակ Հայս ի վերայ հռոմէական լեգէոնաց. հարկ էր ունենալ իւր համամիտ զնախարարսն, կիսով չափ ինքնօրէնս ըստ ներքին քաղաքային հանգամանաց երկրին, և որոց մեծ մասն էր ապաքէն տակաւին մէտ ի հեթանոսութիւն, ուր Եւսեբիոս ջերմագոյնս գիտէ զՀայս ի բարեպաշտութեան որ առ Աստուած։ Ազգ մի առանց ուսման և փիլիսոփայութեան, ընկղմեալ ի բազում դարուց հետէ ի թանձ-

րամած խաւար կռապաշտութեան, որպիսի էր Հայոցն. գիտե՞րդ ի միջոցի հինգ կամ վեց ամաց հասաւ յայնպիսի նախանձաւորութիւն առ սէր քրիստոնէական հաւատոյ՝ մինչև ինքնակամ խիզախել ի մարտ պատերազմի ընդդէմ հեթանոս թագաւորի, քան զոր ինքն չէր լաւագոյն՝ եթէ չէր ի միջի բաւական մասն մի արդէն քրիստոնեայ, ինչպէս էր ի Հռոմայեցիս առ Կոստանդիանոսիւ։ Երկոքին հրովարտակքն հալածման Տրդատայ (Ագաթ. ԺԲ.), եթէ համարինք զնոսա վաւերականս, բայց մանաւանդ լինելն աշխարհին Հայոց յառաջ իսկ քան զԳրիգոր վիճակ մետրապոլտին Կեսարիոյ՝ բաւական են ցուցնելու, թէ քրիստոնէութիւնն էր յայնժամ ըստ բաւականին տարածեալ ի Հայս։ Զպատմութիւն քարոզութեանն Թադէի, զվկայաբանութիւնն Ոսկեանց, որ չէ յառաջ քան զերկրորդ կէս Ե. դարու, ևս նորագոյն՝ զՍուքիասեանցն, որ էին յազգականութենէ Սաթինկան ըստ աւանդութեան և վկայեցին առ Արտաւազդաւ՝ — կրնայինք համարել նշան կանխագոյն տարածման քրիստոնէութեան ի Հայս՝ եթէ կար բաւական պատճառ վաւերական համարելոյ այնպիսի աւանդութիւններ։ «Բաւական էր արդեօք առ ի դոյն — ասէ բարեաց յիշատակաց արժանին Գաթըրճեան—վկայութիւն դրուցւոյն մերոյ Փիրմիլիանու եպիսկոպոսի Կեսարիայ Գամրաց, զորմէ ասի (Խոր. Բ. ՀԵ.) պատմել ի գիրսն հալածանաց. թէ այնչափ յաճախեալ ի Հայս էին քրիստոնեայք՝ մինչև արքայի նոցա յարուցանել հալածանս ի վերայ նոցա և զբազումս սպանանել։ Այլ աւաղ զի այն վկայութիւն չունի ինչ ոյժ, այնու զի այն մատեանն, զոր իբրև մատեան Փիրմիլիանեայ ի կիր արկանէ պատմագիրն Հայ (Խորենացի)՝ ունի պատմութիւնս հալածանաց մինչև ցամն 311՝ ըստ վկայութեան նորին պատմագրի, ուր վաղ, յամի 269, վախճանեալ էր Փիրմիլիանոս։ Նմին իրի հարկ է մեզ շատանալ վկայութեամբն Տերտուղիանու († 240) որ բազում հաւատացեալս ի Հայս համարի լեալ» (Տերտ. ընդդ. Հր.)։

Զիարդ և իցէ՝ Հայոց դարձն ի ձեռն Գրիգորի չէր առաջինն յեկեղեցական պատմութեան մերում։ Թողլով զդարձ Աբգարու, ասորական աղբերէ, ձևեալ ի վերայ պատմութեան դարձին Ադիաբենայ թագաւորին Իզատայ ի հրէութիւն ըստ Յովսեպոսի եբրայեցւոյ ժամանակակցի, թողլով, ասեմք, զայս՝ առնունք իբրև առաւել վաւերական՝ զդարձն Ուռհայեցւոց և Հայոց միանգամայն ի ձեռն Թադէի և Բարթուղիմեայ, երկուց առաքելական ամոլոց, որպէս կամի աւանդութիւնն, և կամ, որ աւելի հաւանական է՝ ի ձեռն Ադդէի ուրումն, որ յետոյ փոխուած է ի Թադէ։ Եթէ դնենք ևս, թէ «գալուստ առաքելոյն Թադէոսի ի Հայս, և հաւատալ Սա-

նատրկոյ և թողուլ զհաւատն յերկիւղէ նախարարացն Հայոց, և կատարումն առաքելոյն ի գաւառին Շաւարշան, և պատառումն քարին և յիրար գալ և ընդունել զմարմին առաքելոյն, և մարտիրոսանալ թագաւորին դստերն» (Խոր. Բ. ԼԴ.) են ողջոյն իսկ կամ կէս վէպ, և կամ, ընդ հակառակն, եթէ գնենք թէ քարոզողն էր Թադէոս մին յեօթանասնից, և Սանատրուկ ումն թագաւոր Հայոց եղև արդարև «առաքելասպան», որպէս կամի Բուզանդ՝ տակաւին ճշմարիտ է, թէ անդէն իսկ յառաջնում դարու քարոզեցաւ Աւետարանն ի Հայս և հաստատուեցաւ արեամբ։

Բաւական համարելով այսչափ Հայոց դարձին վրայ, զոր, որչափ մարթ էր, հանելով վկայաբանական ձևէն բերինք ի պատմական, ուստի և ի բանաւոր և հաւանական ձև՝ գանք Խորենացւոյն ՁԱ. գլխոյն, ուր թողինք զնա։

Խորենացւոյն ՁԱ. գլուխն է Մամիկոնեանց ծագման վրայ, զորմէ իբրև զրոյց կը պատմէ այսպէս. Սասանեան Արտաշրի ժամանակ Մամիկոնեան ցեղին նախնին Մամգուն ծենաց երկրէն, որպէս թէ գժտութեան իբրք պատճառաւ ուրիշ երևելի իշխանի հետ՝ կը գտնուի յանցաւոր, և խոյս տալով ծենաց Արբակ անուն թագաւորէն, որ կը խնդրէր սպանանել զնա՝ կու գայ առ Արտաշիր Սասանեան, որ ի շնորհս Արբոկայ, որ կը խնդրէր զՄամգուն, սպառնալով պատերազմ՝ թոյլ կու տայ Մամգունայ գաղթել ի Հայս ի սկզբան թագաւորութեանն Տրդատայ.—«Ի սորա (Արտաշրի) աւուրս եկեալ ի Հայս նախնի ազգին Մամիկոնէից յարևելից հիւսիսականէն, ի քաջատոհմիկ և ի գլխաւոր աշխարհէ և ամենայն հիւսիսականաց ազգաց առաջին, ասեմ իսկ զծենացն, որ ունին զրոյց այսպիսի։ Ցամս կատարման կենացն Արտաշրի՝ Արբոկ ումն ծենբակուր, որպէս ասի ի նոցա լեզուն պատիւ թագաւորութեան. սորա երկու դայեկորդիք Բղդոխ և Մամգուն անուն կոչեցեալ, մեծ նախարարք։ Եւ չարախօսեալ Բղդոխայն զՄամգունայն՝ հրամայեաց թագաւորն ծենաց Արբոկ սպանանել զՄամգունն։ Զոր իմացեալ Մամգունայն՝ ոչ գայ ի կոչն արքայի, այլ փախուցեալ աղխիւ իւրով անկանի առ Արտաշիր թագաւորն Պարսից։ Եւ Արբոկ հրեշտակս առաքէ խնդրել զնա. և ի չլսելն Արտաշրի՝ պատերազմ ի վերայ նորա յօրինէ թագաւորն ծենաց։ Եւ իսկոյն մեռեալ Արտաշրի՝ թագաւորէ Շապուհ։ Արդ թէպէտև ոչ տայ Շապուհ զՄամգունն ի ձեռն տեառն իւրոյ, այլև ոչ յԱրեաց երկրին թողու. բայց ամենայն աղխիւն իւրով առաքէ զնա իբրև վտարանդի առ գործակալս իւր որ ի Հայս։ Եւ յղէ առ թագաւորն ծենաց ասելով, թէ Մի թուեսցի քեզ դժուար՝ զի ի ձեռս քո ոչ կարացի տալ

զՄամգուն, վասն զի երդուեալ էր նմա հօրն իմոյ ի լոյս արեգական. այլ վասն անխռով զքեզ առնելոյ՝ հալածեցի զնա յաշխարհէս իմմէ յեզր երկրի և ի մուտս արևու, որ հաւատար է նմա մահու. և արդ մի լիցի պատերազմ ընդ իս և ընդ քեզ։ Եւ զի քան զամենայն բնակեալս ի վերայ երեսաց երկրի խաղաղասէր ասեն զազգն Ճենաց՝ յանձն առնու առնել զհաշտութիւն։

Թէ ինչ երկիր էր Ճենք, զոր Խորենացին կը դնէ յարևելից հիւսիսոյ՝ չէ յայտ ստուգիւ, սակայն կը կարծուի թէ էր երկիրն Սինէացւոց կամ Չինաց. և չէ անհաւանական, նայելով երկրին նկարագրին՝ զոր կ'ընէ Խորենացին. թէպէտ քերթողահայրն մեր, միանգամայն աշխարհագիր ըստ աւանդութեան՝ պարտէր ասել մանաւանդ «ի ծագաց արևելից», քան «յարևելից հիւսիսոյ»։

«Սքանչելի է—կ'ըսէ Խորենացին, յառաջ տանելով պատմութիւնը—աշխարհն առատութեամբ ամենայն պտղոց, և գեղեցիկ բուսովք զարդարեալ, քրքմաւէտ և սիրամարգաշատ և բազմամետաքս, անբաւութիւն յամուրաց և հրէշից, և որ էշայծեմունսն անուանեն, ուր հասարակաց կերակուր ասեն զառ մեզ պատուական և սակաւուց ճաշակելիս, զփասեան և զպոր, և այլ այսպիսիք։ Այլ զականց և զմարգարտաց ոչ ասեն գիտել զհամար մեծամեծացն. իսկ պատուականքս առ մեզ զգեստուց և սակաւուց ագանելիք՝ հասարակաց նոցա է զգեստ։ Եւ այս յաղագս աշխարհին Ճենաց։

«Իսկ Մամգունայ յոչ կամաց եկեալ յաշխարհս մեր՝ հանդիպեցաւ գալստեանն Տրդատայ, և ոչ դարձաւ ընդ զօրս Պարսից, այլ ամենայն ազխիւն իւրով ընդ առաջ գնաց նմա մեծաւ պատարագաւ. և Տրդատ ընկալաւ զնա, բայց զկնի իւր ի պատերազմ ոչ էած զնա յերկիրն Պարսից. այլ ետ տեղի ազխի (հետը եղողներուն) նորա և ռոճիկ ի կերակուր, փոխելով տեղի ի տեղւոջէ ցբովանդակ ամս»։

Թէ Մամիկոնեանք էին հաստուած ի Ճենաց՝ այս ծանօթ էր յազգին, և Բուզանդ կը յիշէ երկիցս։ Պապ ի գովելն զզօրավար իւր Մուշեղ՝ կոչէ զնա «Այր, ազգաւ պատուական իբրև զմեզ. նախնիքն դորա իբրև զնախնիսն մեր. թողեալ նոցա զթագաւորութիւնն Ճենաց աշխարհին՝ եկեալ առ մեզ, ի նախնեացն մերոց վերայ կեցեալք և մեռեալք են» (Բուզ. Ե. Դ.)։ Նոյն Բուզանդ Մանուէլի սպարապետին կու տայ ասել ցՎարազդատ. «Մեք չեմք լեալ ձեր ծառայք, այլ ընկերք ձեր և ի վերոյ քան զձեզ. զի մեր նախնիքն լեալ էին թագաւորք աշխարհին Ճենաց... և վասն բարւոյ հանգստի գտանելոյ եկեալ դադարեալ եմք։ Առաջին թագաւորքն Ար-

շականիք զխաէին զմեզ ով էաք կամ ուստի էաք» (Բուզ. Ե. ԼԷ.)։ Բայց թէ այս, այսինքն գալուստն Մամիկոնեանց ի Հայս, եղեւ առ Արտաշրիւ, և Տրդատ եղեւ առաջին, որ տուաւ նոցա նախարարութեան պատիւ յետ նուաճելոյ նախնւոյն նոցա Մամգունայ զապստամբ իշխանն Ողկանեաց ըստ Խորենացւոյն, ինչպէս պիտի տեսնենք յետոյ՝ այս չթուիր ճշմարիտ։ Բուզանդ գիտէ շատ հին զՄամիկոնեանս իբրև տոհմ զօրավարաց։ Արտաւազդ և Վաչէ արդէն առ Խոսրովաւ որդւով Տրդատայ կը յիշուին իբրև սպարապետք, և սպարապետութիւնն կը կոչուի իբրև հայրենի իշխանութիւն այն ցեղին.—«ԶՎաչէի զօրավարի փոքրիկ մանկիկ մի զնորուն զորդի ի հայրենի բարձ գահուն մատուցանէին, որում անուն էր յանուն հօր իւրոյ Արտաւազդ։ Առաջի թագաւորին զհօրն պատիւն ի գլուխն դնէին, և զսպարապետութեանն նորուն տեղի. զի կարի որդի վաստակաւորի էր և ի վաստակաւոր ազգէ» (Բուզ. Գ. ԺԱ.). և զԱրշակայ, թոռնորդւոյն Տրդատայ ասէ, թէ «ի խնդիր ելանէր տոհմին զօրավարաց ազգին քաջացն Մամիկոնենից, մանաւանդ զի իւր դայեակքն և սնուցիչք էին. երթեալ գտանէր զնոսա յամուրս աշխարհին Տայոց յիւրեանց աշխարհին, և դարձուցանէր զնոսա յընտանութիւնն, զի պառակտեալք և քակտեալ էին յընդանութենէն և յամենայն գործոց Հայոց ի ժամանակս խօլութեանն Տիրանայ» (Բուզ. Դ. Բ.)։ Եւ սակաւ մի խոնարհ ասէ, թէ «սպարապետութիւն զօրավարութեանն Հայոց... էր ի բուն ի նախնեացն կարգաց ի Մամիկոնեան ազգին» (Բուզ. Դ. Բ.)։

Խորենացին, ինչպէս կ'երևի, ի շնորհուկս կարծեցեալ Մեկենասին իւրոյ Սահակայ իշխանին Բագրատունեաց, զոր կը պատմէ լեալ սպարապետ Հայոց (Խոր. Գ. ԼԷ.)՝ չտար ամենևին սպարապետի անուն Մամիկոնեանց, այլ նուաստացունելով զնոսա կը կոչէ զինակիրս արքայի, այսինքն թագաւորին զէնքը կրող սպասաւոր (Խոր. Գ. ԻԲ. և ԻԵ.). մեծին Վարդանայ միայն կու տայ ստրատելատ տիտղոսը յետ մահուն Սահակայ ասպետի, սպարապետին Խոսրովու վերջնոյ (Խոր. Գ. ԾԸ.)։

Ըստ Բուզանդայ՝ կար նաև ի Պարսկաստան նշանաւոր տոհմ ազգակից Մամիկոնեանց. «ԶԴեհկան նահապետ, որ տոհմիկ իսկ էր ազգաւ տոհմին զօրավարացն Հայոց, այսինքն Մամիկոնենից, առաքէր զնա թագաւորն Պարսից Շապուհ յերկիրն Հայոց ի վերայ Արշակայ։... Եւ զօրավարն Վասակ ելանէր ընդ առաջ նոցա եւթանասուն հազարաւ. հարկանէր սատակէր զզօրսն ամենայն Պարսից, սպանանէր զիւր զազգայինն (ազգական) զԴեհկան նահապետն» (Բուզ. Դ. ԼԲ.)։

Խորենացւոյն ՁԲ. գլուխն է դարձեալ զՏրդատայ, այսինքն զնահատակութեանց նորա, որպէս ասէ՝ յառաջ քան զհաւատալն։ Ըստ Խորենացւոյն՝ Տրդատ թագաւորելով Դիոկղետիանոսի երրորդ տարին, այն է 287-ին, կու գայ ծանր զօրօք ի Կեսարիա, ուր ընդառաջ լինին նմա բազմութիւնք նախարարաց. և գալով ի Հայս կը գտնէ զՕտայ, որ հանդերձ Խոսրովիդխտով, քերբ թագաւորին, ամրացած էր յԱնի յերեսաց Արտաշրի։ Խորենացին յետ գնելոյ համառօտ գովեստ մի զՕտայէ և զԽոսրովիդխտոյ՝ կը պատմէ կարգաւ, թէ ինչպէս Տրդատ վարձատրեց իւր հաւատարիմ նախարարները, կացուցանելով զՕտայ հազարապետ, զԱրտաւազդ Մանդակունի զազատիչն իւր՝ սպարապետ և զքեռայր նորա Տաճատ՝ իշխան գաւառին Աշոցայ։

Խորենացին Տրդատայ գործոց համար ի Յոյնս՝ ղրկելով զընթերցողս իւր առ Ագաթանգեղոս—«Իսկ որ ինչ ի նորա (Դիոկղետիանոսի) ժամանակսն գործք՝ յայտնէ քեզ Ագաթանգեղոս»—կը թուի լռելեայն ընդունել Տրդատայ մենամարտութիւնն ընդ թագաւորին Գթաց, և ի վարձ այն յաղթութեան զառնուլ նորա ի Դիոկղետիանոսէ իւր հարց թագաւորութիւնը, և հռոմէական զօրօք գալով ի Հայս՝ վանելն զՊարսիկս, այլովքն հանդերձ։

Ձայս կ՚ակնարկէ ՁԲ. գլխոյն սկիզբը. «Քանզի ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան՝ վասնորոյ մանրախուզիւ քննեալ գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի, և գալ այսր մեծաւ զօրու։... Իսկ քաջին Տրդատայ երագապէս և բազում ճակատս տուեալ, նախ ի Հայս և ապա ի Պարսս՝ իւրով անձամբ առնէր զյաղթութիւնն։ Որ ի միում նուագի առաւել քան զԵղիանանն զայն ի հնումն, կանգնեաց զնիզակն յօգնական համաթիւ վիրաւորաց։ Դարձեալ յերկրորդումն կորովեացն Պարսից զփորձ առեալ զաստակութեան սկայլին և կուռ վառուածոցն, բազում վիրօք պատեալ զձին՝ սատակեցին նետաձգութեամբ, որոյ զարկուցեալ յերկիր ընկենոյր զարքայն։ Իսկ նորա յարուցեալ և ի հետի յարձակեալ՝ փոխանակ իւր զբազումս ընկենոյր ի թշնամեացն, և զմիոյ ուրումն զձի կալեալ՝ արիաբար աշտանակեալ։ Դարձեալ յերկրորդին միւս անգամ կամաւոր լեալ հետի՝ սուսերաւ զերամակս փղացն պուղէր։ Եւ այսպիսի նահատակութեամբ յամեալ ի Պարսս և յԱսորեստան՝ անդր ևս քան զՏիգրոն յարձակի»։

Գիտենք արտաքին ժամանակակից պատմութենէ, թէ Կարակալլա ի գալն յարևելս ի վերայ Արտաւանայ, բռնելով զՎաղարշ արքայ Հայոց՝ բանտարկեց (216)։ Կարակալլա սպանաւ (217), և

յաջորդ Նորա Մակրինոս զրկեց թագ առ Տրդատ Բ. (ըստ Հայոց՝ Խոսրով), որդի Վաղարշու (218), որ մեռած էր ի բանտի։ Երբ 8 ամօք յետոյ Արտաշիր Սասանեան սպանանելով զԱրտաւան՝ կը տիրէ Պարսից և կ'սպառնայ Հայոց, բայց միացեալ զօրութենէ Հայոց և Հռոմայեցւոց (Աղեքսանդր Սեւերոս) կ'արգելուի մտնելէ ի Հայաստան։ Այսպէս Հայք կը մնան ազատ։ Շապուհ, յաջորդն Արտաշրի, յարձակեցաւ Հռոմայեցւոց վրայ ի Միջագետս, յաղթուեցաւ Գորդիանոսէ Գ. (241—243). բայց Փիլիպպոս Արաբացի (244—249) կը հաշտուի ընդ Շապհոյ, որ կը մնայ տէր Միջագետաց և Հայոց։ Թէ ինչ եղան յայնժամ Հայք՝ յիշուած չէ, սակայն հաւանական է, թէ Տրդատ Բ. կամ Խոսրով կը թագաւորէր խաղաղութեամբ, նաև բարեկամութեամբ ընդ Շապհոյ, բայց թէ մինչև երբ՝ չէ յայտ. հաւանականապէս մինչև 259, քանզի այս թուականին, երբ Վաղերիանոս գալով յարևելս կը բռնուի գերի ի Շապհոյ՝ թագաւորն Հայոց Արտաւազդ, յաջորդ Տրդատայ Բ. (Խոսրովու), է բարեկամ և օգնական Շապհոյ։ Հայք բարեկամ են Պարսից նաև առ Աւրելիանոսիւ (270—275)։ Կարոս (282—283) առ Վռամաւ Բ. (275—292) կը մերժէ զՊարսիկս ի Միջագետաց, և Հայք են դարձեալ դաշնաւոր Հռոմայեցւոց։ Կարոս կ'սպանուի, ինչպէս նաև երկոքին որդիք գահակիցք նորա, Նումերիանոս և Կարինոս (282—284), և կը թագաւորէ Դիոկղետիանոս (284—305)։ Առ սովաւ Ներսեհ արքայ Պարսից (292—302), նախանձելով փառաց նախնւոյն իւրոյ Շապհոյ՝ կը գրաւէ միւսանգամ զՄիջագետս և զՀայս. բայց Գաղերիոս զօրավար Դիոկղետիանու կը զարնէ (297) չարաչար զՆերսեհ, և կը հաստատուի դաշամբ խաղաղութիւնն, որ կը տևէ քառասուն տարի կամ մինչև ի մահն Կոստանդիանոսի։ Այս պատերազմէն յառաջ կամ իսկ և իսկ յետոյ է, թէպէտ յանուանէ յիշուած չէ յարտաքին ժամանակակից պատմութեան, Տրդատ Գ. մեծ, իբրև յաջորդ Արտաւազդայ, թերևս որդի նախորդին սորա Տրդատայ Բ, կամ Խոսրովու ըստ Հայոց։

Պատմութիւնս, զոր համառօտեցինք ի Տրդատայ Բ. (Խոսրով) մինչև ի Տրդատ Գ. մեծը՝ չթողուր մեզ ընդունել ո՛չ սպանումն թագաւորի, ո՛չ իբր 60-ամեայ անիշխանութիւն, ո՛չ գրաւել Արտաշրի զՀայս, ոչ փախուստ մանկանն Տրդատայ ի կոտորածէ և կալ մնալ իբր 50-ամեայ ժամանակ ի Յոյնս առ Լիկիանու ուրումն, և ի վախճանի մենամարտել ընդ թագաւորին Գթաց և զօրօք գալ նուաճել զՀայս, տալով բազում ճակատս ընդ Պարսից, մինչև երթալ անդր քան զՏիգրոն, այլովքն հանդերձ։

Յառաջին ամս Տրդատայ, այսինքն մինչև 307, եղան գլխա-

ւոր պատմական դէպք դարձին Հայոց, այն է հալածումն Գրիգորի և մարտիրոսութիւնն Հռիփսիմեայ հանդերձ ընկերօք ոմամբք, և այս վերջնոյն պատճառաւ թերևս հիւանդութիւն ինչ, որ եկաւ Տրդատայ, ըստ թղթոյն Արտաշրի առ Վռամշապուհ ըստ Խորենացւոյն (եթէ վաւերական համարինք թուղթը, Խոր. Գ. ԾԱ.), դէպք՝ որ եղան պատրաստութիւն առ դարձն։ Տեսութիւնն Տըրդատայ ընդ Կոստանդիանոսի ի Հարսանիսն, և չէ անհաւանական, պսակեց դարձը, որ կատարեցաւ գէթ թագաւորին կողմանէ 307—310, և որոյ զհետ եկն պատերազմն ընդ Մաքսիմինոսի։

Ըստ ՁԳ. գլխոյ Խորենացւոյն՝ Տրդատ կ'առնու կին զԱշխէն, դուստր Աշխադարայ ուրումն։ Տրդատայ ամուսնութեան դէմ չունիմք ինչ ասել, թէպէտ Խորենացին չըսեր, թէ ո՛վ էր այն Աշխադար, և ոչ՝ թէ ի՛նչ աղբերէ կ'առնու այս պատմութիւնը։ Ի սոյն կը յարէ Տրդատայ երթալն ի Հարսանիսն Կոստանդիանոսի։ Արդարև Հարսանիք եղան Կոստանդիանոսի 307-ին, բայց ո՛չ, ինչպէս արդէն ըսինք, ընդ Մաքսիմինայ դստեր Դիոկղետիանոսի, այլ ընդ Փաւստայ դստեր Մաքսիմիանոսի։ Այս երթն Տրդատայ ի Հարսանիսն և բարեկամանալ նորա ընդ Կոստանդիանոսի, թէպէտ չունի կատարեալ ստուգութիւն ժամանակակից աղբերէ՝ չէ սակայն ըստ մեզ անհաւանական, և այլուստ կը նպաստէ յոյժ լուծելու Հայոց դարձին պատմութեան հանգոյցը։

Ցետ պատմութեան Հարսանեաց, Խորենացին ընելով պատմական զարտուղութիւն՝ կը մուծանէ Կոստանդիանոսի դարձին առասպելական պատմութիւնը, որպէս թէ Կոստանդիանոս, «Հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ, ի դստերէն Դիոկղետիանոսի՝ յարոյց հալածանս եկեղեցւոյ. և զբազումս վկայեալ՝ ինքն եղեփանդական բորոտութեամբ ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ վասն յանդգնութեանն։ Զոր ոչ կարացին բուժել արիոզական կախարդքն և մարսիկեան բժիշկքն։ *Ցաղագս որոյ յղեաց առ Տըրղատ առաքել նմա ղիւլթս ի Պարսից եւ ի Հնդկաց, սակայն եւ այնք ոչ հասին նմա յօգնութ:* (Այս մասը կը թուի յաւելուած ի կողմանէ Խորենացւոյն)։ Զոր և քուրմք ոմանք ի դիւաց խրատուէ հրամայեցին բազմութիւն տղայոց զենուլ յաւազանս, և ջերմ արեամբ լուանալ և ողջանալ. որոյ լուեալ զլալիւն մանկանցն հանդերձ մարցն կականմամբք՝ գթացեալ մարդասիրեաց, զնոցայն լաւ վարկուցեալ քան զիւրն փրկութիւն։ Յաղագս որոյ զփոխարէնն յԱստուծոյ ընդունի, յանրջական տեսութիւն Առաքելոցն առեալ հրաման՝ սրբել լուացմ։։մբ կենսատու աւազանին ի ձեռն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռոմայ, որ ի նմանէ հալածանացն թագու-

ցեալ էր ի Սոկրատիոն լեառնն. յորմէ և աշակերտեալ Հաւատաց, զբռնաւորսն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց նորա»: Ի վախճանի յարելով, «որպէս Համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»՝ կու տայ կարծել, թէ Ագաթանգեղոս է աղբիւր այն պատմութեան: Արդարև Ագաթանգեղոս, թիւ ձԻԵ. կը դնէ Կոստանդիանոսի դարձին պատմութիւնը լի առասպելօք, որպէս թէ Կոստանդիանոս թագաւորելով «յերկրին Սպանիացւոց»՝ կը Հաւատայ յԱստուած, և կուտելով բազմութիւն զօրաց «առ ափն ովկիանոս աՀագին ծովուն՝ ուխտէր ընդ ամենեսին զի առՀասարակ ամենայն ոք ճշմարտութեանն Հաւատասցէ... և յԱստուած խրախուսեալ... կործանէր զօրութեամբ քրիստոսեան խաչին» ոչ միայն զՄաքսիմիանոս, զԼուկիանոս և զՄաքսենտիոս, այլ և զԴիոկղետիանոս և զՄարտիանոս (ինք կ'ստեղծէ այս վերջինը):... «Եւ այնպէս յաղթող երևեալ զինքըն Հաստատէր, մինչև զամենայն աւուրս կենաց իւրոց Հրեշտակ ի յերկնից երևեալ, զօրՀանապազ նմա սպասաւոր կարգեալ՝ ընդ առաւօտս առաւօտս զքրիստոսեան նշան թագի նորին առեալ ի գլուխն դնէր»: Բայց Ագաթանգեղոսի այս պատմութեան մէջ չկայ ո՛չ Կոստանդիանոսի իւր կնոջէն ի Մաքսիմինայ, Դիոկղետիանոսի դստերէն, Հրապուրեալ յարուցանելն Հալածանս, և եղեփանդական բորոտութեամբ ապականեալ՝ ո՛չ կախարդներէ, ո՛չ բժիշկներէ և ոչ ի Տրդատայ զրկուած Պարսից և Հնդկաց դիւթերէ գտնելը բժշկութիւն, և ըստ խրատու քրմաց մանր տղայս զենլով յաւազանս՝ արեամբ նոցա լուանալն, և որ ի կարգին: Այս բաներուն և ոչ նըշմարանքը կայ առ Ագաթանգեղոսի: Խորենացին այն պատմութիւնը կ'առնու (ինչպէս ցուցուց մօտերս Ա. Գարիէր, ուսուցիչ արևելեան լեզուաց և առանձինն Հայերէնի ի Բարիզ) «Վարք Սեղբեստրոսի» անուանեալ գրուածէ մը, որ ըստ դիտողութեան Ա. Գարիէրի գըրուած էր լատիներէն, և ապա թարգմանուած յունարէն: ՈրովՀետև, կ'ըսէ, ըստ Հետազօտութեան Մ. Տիւշէնի, Սեղբեստրոսի վարուց լատիներէնն կը թուի գրուած դէպ ի վախճան Ե. դարուն և ի սկզբան Զ.-ին թարգմանուած ի յոյն՝ կը Հետևի թէ Խորենացւոյն պատմութեան յօրինումն եղած է՝ ո՛չ, ինչպէս ընդՀանրապէս կը կարծուի, մօտ ի վախճան Ե. դարուն (460—480), այլ ի Զ. դարուն. ըստ մեզ՝ աւելի անագան:

Արդարև նայելով Խորենացւոյն պատմութեան լեզուին, որ չէ միակերպ. և գլուխներէն ոմանց, որ են եկամուտ, այսինքն յայլմէ մուծեալ և յետին, որպիսի են Հաւանականապէս առաջին եօթն գլուխք, և մանաւանդ Գ. դպրութեան ԿԱ. գլխոյն վերջին Հատուածն և ԿԲ. գլխոյն ողջոյն՝ կրնանք զյօրինումն այն պատմու-

թեան գնել ոչ ի վեցերորդ, այլ յեօթներորդ դարս իսկ, մանաւանդ որ Մովսէս Խորենացի անուն զոք չենք գտներ յիշուած ի մատենագիրս Ե. դարու, և ոչ Փարպեցին, որ էր ժամանակակից և ծանօթ Սահակայ Բագրատունւոյ, ինչպէս ըսուեցաւ այլուր՝ գիտէ ի խնդրոյ նորա ի Մովսիսէ ումեքէ Խորենացւոյ գրուած պատմութիւն Հայոց, զոր հարկ էր նմա գիտել, քանզի Սահակ էր գործակից Վահանայ, բարեկամին և պաշտպանի Փարպեցւոյն։ Ուստի հաւանականագոյն այս է, թէ պատմութիւն Խորենացւոյն, ըստ արգի վիճակին՝ է գործ Է. դարու. և որպէս զի տարակոյս չմնար թէ գործն է Ե. դարու՝ տրուած է կարծեցեալ հեղինակին Մեկենաս՝ Բագրատունին Սահակ մարզպան, գործակից Վահանայ, բայց այսու մանաւանդ կը խայտառակի խաբէութիւնն։ Այսպիսի խաբէութիւն մը չէ զարմանալի, քանզի ուրիշ առասպելական գրութեան, այն է պատկերին պատմութեան համար ըսուած է, թէ գրեց նոյն Մովսէս Խորենացի ի խնդրոյ այլոյ ուրումն Սահակայ Արծրունւոյ։ Այլուստ, ինչ ինչ առ Խորենացւոյն, մանաւանդ նկարագիր աշխարհականութեան հայ կղերին և արկածից ժամանակին յՈղբսն՝ յայտնի կը ցուցնեն, թէ գրողը կ՚ապրէր յԷ. դարուն, ինչպէս արդէն ըսուեցաւ։

Խորենացւոյ ՁԳ. գլխոյն վրայ կան գիտելու արժանի ինչ ինչ, զորով չէ պարտ լռութեամբ անցնել։ Ինչ որ այս գլխոյն մէջ կը պատմէ Խորենացին Կոստանդիանոսի գարշին վրայ՝ ինչպէս ըսինք, առնուած է Սեղբեստրոսի վարուց առասպելական պատմութեան յունարէն թարգմանութենէն, որոյ հայերէն թարգմանութիւնն ևս կայ, գործ Զ. կամ Է. դարուց, զոր Հայկ. բառարանն կը համարի հին թարգմանութիւն ընտիր։ Զարդիս յայտնի է սակայն, թէ այս թարգմանութիւն, ինչպէս լեզուն ևս կը մատնէ՝ չկարէ լինել հնագոյն քան զԷ. դար, կամ քան զվախճան Զ.-ին։ Թէ հեղինակ պատմութեան Խորենացւոյն այս հայերէն թարգմանութենէն կ՚առնու տեղեկութիւնները, զոր կու տայ զԿոստանդիանոսէ՝ է առանց հակառակութեան։ Արիողական, ինչպէս կը դիտէ Լանկլուա՝ է լատիներէն բառն hariolus կամ ariolus — դիւթ կամ հմայ, որ բազում էին առ Հռոմայեցիս. իսկ Մարսիկեանն կ՚ակնարկէ զՄարսաժողովուրդ պատերազմող Իտալիոյ, որ համբաւեալ էին իբրև հմայող և թովիչ։ Ըստ արդի քննչաց՝ չէ ամենևին ճշմարիտ թէ Հեղինէ մայրն Կոստանդիանոսի էր հարճ Կոստանդայ, հօր Կոստանդիանոսի. իսկ թէ Կոստանդիանոս հարաւ բորոտութեամբ ի պատիժ հալածանաց ինչ, զոր յարոյց ընդդէմ քրիստոնէից, և թէ քուրմք ոմանք խրատ տուին նմա մանր տղայոց արեամբ լուանալ, և նա գթալով

ի լալիւն մանկանցն և մարց նոցա, իբրև վարձ հրաշիւք ընկալաւ բժշկութիւն մկրտութեամբ ի ձեռն Սեղբեստրոսի՝ է լոկ առասպել։ (Տես Լանկլ. ծողովածու, հտ. Բ. էջ 123, ի ծանօթութիւնսն)։

Ըստ ԶԴ. գլխոյ Խորենացւոյն՝ Շապուհ Բ. (309—381) համարելով դիպող ժամ զերթն Տրդատայ ի Հռոմ առ Կոստանդիանոս՝ կը գրգռէ հիւսիսային վայրենի ցեղեր յորձակել ի Հայս, և ինքն ևս լինի ժամադիր գալ իւրովքն։ Ընդ Շապհոյ ի բանի է Սղուկ նահապետ ազգին Սղկունեաց։

ԶՍղկունեաց տես Ա. մասն, էջ 212, 242։ Ըստ Խորենացւոյն՝ Սղկունեաց ցեղէն Սղուկ ոմն, իշխան Տարօնոյ, ապստամբելով առ Տրդատաւ՝ կը նեղէր զերկիրն, և Մամգուն, Մամիկոնեանց նախնին, մատոյց ծառայութիւն մեծ Տրդատայ՝ սպաննելով զՍղուկ դաւով։ Ահա պատմութիւն Խորենացւոյն.—«Ընդ հանդչելն Շապհոյ արքայի Պարսից ի պատերազմացն և ի գնալն Տրդատայ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս, պարապ առեալ խորհրդոց Շապհոյ՝ նիւթէ չարիս ի վերայ մերոյ աշխարհիս. Թողեալ զհիւսիսայինսն ամենայն ելանել ի Հայս՝ ժամ դնէ և իւր գալ Արեօք ի միւս կողմանէն։ Ի սորին բանս հրապուրեալ Սղուկ նահապետ ազգին Սլկունեաց՝ զինքեանն սպանանէ զփեսայ, զծերացեալն Օտայ, որ էր ի տոհմէն Ամատունեաց և սնուցօղ Խոսրովիդխտոյ քեռ թագաւորին։ Եւ այն ինչ ընդ հուպ եկեալ մեծին Տրդատայ յարևմտից, և լուեալ զայս ամենայն, և գիտացեալ թէ ոչ ի ժամադրութիւնն եկն Շապուհ՝ խաղայ ի վերայ հիւսիսականացն։ Իսկ նահապետ ազգին Սլկունեաց ամրանայր յամրոցին որ անուանեալ կոչի Ողական, ապաւէն առնելով իւրեան զբնակիչս Սիմն կոչեցելոյ լերին. և ընդդիմացեալ թագաւորին՝ աղմկէր զերկիրն և մերձ առ լերամբն ոչ թողացուցանէր այլում պարապել գործոյ։ Ասէ ամենայն նախարարութեանց տանս Հայոց՝ արքայ. «Որ ոք ածէ առ իս զնահապետն Սլկունեաց՝ տաց նմա յաւիտենական իշխանութեամբ զգիւղս և զգաստակերտս և զամենայն իշխանութիւն ազգին Սլկունեաց»։ Զոր յանձն առնոյր ճենազեայն Մամգուն։ Եւ ի խաղալ թագաւորին զկողմամբք Աղուանից ի վերայ հիւսիսականացն՝ գնաց Մամգուն ամենայն աղխիւն իւրով զկողմամբք Տարօնոյ, որպէս թէ ապստամբեալ ի թագաւորէն, և ի չու անկեալ՝ առաքէ գաղտագնաց հետևակս, զգացուցանելով նահապետի ազգին Սլկունեաց զգնալն թագաւորին զկողմամբք Աղուանից. «Վտանգ մեծ է, ասէ, ի թագաւորէն Տրդատայ, վասնորոյ գնաց զկողմամբք Աղուանից պատերազմել ընդ ամենայն լեռնոտեայսն. վասն որոյ մեր է ժամանակ ի ճահ խորհել և գործել որ ինչ կամք են. զի խորհեալ եմ դաշնաւոր լինել ընդ քեզ

վասն արհամարհանաց իմոց ի Թագաւորէն»։ Ընդ որ ուրախացեալ նահապետ ազգին Սլկունեաց՝ ընդունի զնա երդմամբ ուխտից, բայց յամուրն ոչ թողու, մինչև տեսանել թէ որպէս պահիցէ զմտերմութիւնն երդմանց և դաշնաւորութեանցն։ Իսկ ասացեալն Մամգուն ամենևին ջանացեալ զմտերմութիւն ցուցանել առ ապստամբին՝ հաւատարմացաւ նմա որպէս արդարև միամիտ գործակից, մինչև հրամայեաց նմա համարձակ մտանել յամուրն և ելանել։ Եւ յետ բազում վստահութեանն, ի մրում աւուրց հաւանեցուցանէ զնահապետ ազգին Սլկունեաց ելանել արտաքս յամրոցէն և որսալ երէս. և ի միջամուխ լինել որսոցն՝ դիպեցուցանէ աղեղամբն ընդ մէջ թիկանցն, և կործան յերկիր զարկուցանէ զապստամբն։ Եւ ընթացեալ իւրով արամբքն ի դուռն ամրոցին՝ ունի զբերդն, կապելով զամենայն արսն որ ի ներքս։ Նաև զազգն Սլկունեաց խարհեցաւ բառնալ, և կոտորեաց զամենեսեան. երկուք ոմանք փախստական անկան յաշխարհն Ծոփայ։ Իսկ Մամգուն վաղվաղակի զգացուցանէ Թագաւորին. ընդ որ ուրախացեալ Տրդատայ, գրէ հրովարտակ՝ իշխել նմա ամենայնի. և կարգէ զնա նախարար ի տեղի ապստամբին, անուանելով յանուն իւր Մամգունեան։ Բայց մնացելոցն Սլկունեաց հրամայէ չվնասել» (Խոր. Բ. ՁԴ.)։

Թէ երբէք Սղկունի իշխան մի ապստամբելով նուաճեցաւ Մամիկոնեան իշխանէ՝ ինքնին չէ անհաւանական. այլ թէ այս եղաւ առ Տրդատաւ՝ չթուիր ստոյգ, նայելով պարագաներուն որ կը յիշուին ի Խորենացւոյն այս և յաջորդ գլխոց մէջ, պարագաներ՝ որ չեն ճշմարիտ. զոր օրինակ Տրդատայ գտնուելն ի Հռոմ առ Կոստանդիանոսի, և Շապհոյ այն առթիւ գրգռելն զՍղուկ յապստամբութիւն, երթալն Տրդատայ ի դարձին հիւսիսականաց դէմ և վտանգելն, և ապա հռոմայեցի զօրօք տարևոր ժամանակաւ արշաւելն ի Պարսս, և շինելն զԵկբատան։ Գիտենք որ Տրդատ չգնաց երբէք ի Հռոմ առ Կոստանդիանոս. ինչպէս կրնար Շապուհ, առիթ ընելով զայս, գրգռել զՍղուկ յապստամբութիւն։ Եւ ոչ Տրդատայ հիւսիսականաց դէմ արշաւել և վտանգելն, և տարևոր ժամանակաւ հռոմայեցի զօրօք արշաւելն ի Պարսս ունին ստուգութիւն. դարձեալ՝ ինչ Եկբատան է այն՝ զոր Խորենացին կու տայ շինել Տրդատայ։

Թէ ուստի կ՚առնու Խորենացին զպատմութիւն այս գլխոյն, ինչպէս նաև յաջորդ գլուխներուն մինչև ի մահն Տրդատայ՝ պէտք յիշենք յետոյ։ Ստոյգ է միայն, թէ բերդն Ողական որ ի Տարօն՝ էր արդէն առ Պապաւ ժառանգութիւն Մամիկոնէից (Բուզ. Ե. Գ.)։

Ողկունիք կային առ Վարդանամբք, յորոց կողմանէ կը յիշուի առ Եղիշէի Այրուկ Ողկունի։

Ի գլուխն ՁԵ. կը պատմէ Խորենացին Տրդատայ նահատակութիւններն յԱղուանս, այսինքն ի պատերազմին ընդդէմ Հիւսիսականաց, և կու տայ յաղթել Տրդատայ, բայց ոչ առանց մեծ կորստեան։ Թէպէտ ինքնին չէ անհաւանական, թէ Տրդատ կրեց այսպիսի յարձակումն ի Հիւսիսականաց՝ սակայն պատմութեան պարագաներն կը ցուցնեն, թէ Խորենացին կը շփոթէ զայս Տրդատ ընդ Տրդատայ կամ Տիրիթայ Տակիտոսի (Արտաշէս Բ. ըստ Խորենացւոյն) առ Ներոնիւ։ Ըստ ժամանակակից պատմութեան՝ այն Տրդատայ ժամանակ եղաւ յարձակումն ի վերայ Հայոց ի Հիւսիսականաց, և Յովսեպոս, մին ի պատմչաց այն յարձակման, իբր 500 ամօք յառաջ քան զԽորենացին ըստ աւանդութեան և ժամանակակից՝ կը պատմէ այն Տրդատայ վրայ «քեմխտապատ պարանին» դիպուածն, ինչպէս տեսանք այլուր։ Յայտնի է թէ Խորենացին, որ գիտէ զՅովսեպոս՝ կու տայ այն Տրդատայ վրայ պատմուածն այս Տրդատայ։ Ուստի կը համաձայնինք ըսել, թէ Հիւսիսականաց այս յարձակումն առ այսու Տրդատայ չունի պատմական հիմն, ինչպէս նաև Տրդատայ յետ պատերազմին արշաւելն ի Պարսս. քանզի յետ Գաղերիոսի դաշանց, որոյ զօրութեամբ տևեց քառասնամեայ խաղաղութիւն՝ չէ հաւանական թէ եղաւ երբէք պատերազմ Հայոց ընդ Պարսս։ Շապհոյ խլրտելն և նիւթել թշնամութիւն Հայոց դէմ՝ կ'սկսի, ինչպէս ըսուած է այլուր՝ յետ 337-ին, այն է յետ մահուն Կոստանդիանոսի և Տրդատայ, առ Խոսրովու որդւով Տրդատայ։ Ահա ՁԵ. գլուխ Խորենացւոյն.—«Իսկ թագաւորն Տրդատ ամենայն Հայաստանեօք իջեալ ի դաշտն Գարգարացւոց՝ պատահէ հիւսիսականացն ճակատու պատերազմի. և ի խառնել երկոցունց կողմանցն՝ յերկու ճեղքէ զամբոխ թշնամեացն, սկայաբար շահատակելով։ Ոչ կարեմ ասել զերագութիւն ձեռինն, որպէս անբաւք ի նմանէ յերկիր անկեալ թաւալգլոր խաղային. օրինակ իմն ի գեղեցիկ ցանցորդէ լի ձկամբ յերկիր թափեալ ցանցոյն, կայտռէին յերեսս երկրին։ Զոր տեսեալ թագաւորին Բասլաց՝ մօտ հասանէ յարքայն. և հանեալ յասպազինէն զներդեալ քեմխտապատ պարանն, և կորովութեամբ ձգեալ յետուստ կողմանէ՝ ճարպ դիպեցուցանէ յուս ձախակողմանն և յանութ աջակողմանն. զի էր վերացուցեալ զձեռն՝ ածել ումեք սուսերաւ. և ինքն վառեալ վերտ պահպանակօք, ուր ոչ գծէին նետք։ Եւ քանզի ոչ կարաց շարժեալ ձեռամբ զհսկայն՝ զլանջիւք առ երիվարին, և ոչ այնչափ ինչ շութափեաց մտրակել զերիվարն՝ քան թէ ահեակ ձեռամբն ի ներդեայն աճապարեալ սկային, և

սաստկութեամբ ուժոյն գիւրեաւ ցանցեալ՝ ի ճահ դիպեցուցանէր զերկաթյրին, և ընդ մէջ կտրէր զայրն և ընդ զոյգ պարանոցին բզ-գլուխ երիվարին։

Իսկ զօրացն ամենայնի տեսեալ զթագաւորն իւրեանց և զզօրա-ւորն միջակտուր յայնպիսի ահաւոր բազկէ լեալ՝ ի փախուստ դառ-նային. զորոց զհետ մտեալ Տրդատ՝ վարէ մինչև յաշխարհն Հոնաց։ Եւ թէպէտ ոչ փոքր հարուածս իւրոց զօրացն եհաս, և բազմաց անկումն մեծամեծաց, յորում մեռաւ և սպարապետն ամենայն Հայոց Արտաւազդ Մանդակունի՝ սակայն Տրդատ անտի ըստ հայրութեան օրինաց պատանդս առեալ դառնայ։ Որով պատճառաւ միաբանեալ զամենայն հիւսիսի, հանեալ զօր բազում, գումարտակ արարեալ՝ խա-ղայ յաշխարհն Պարսից, գիմեալ ի վերայ Շապհոյ որդւոյ Արտաշրի, չորս յիւրոցն առնելով զօրավարս, զՄիհրան առաջնորդ Վրաց, վստա-հացեալ վասն ի Քրիստոս հաւատոյն, և զԲագարատ ասպետ, և զՄա-նաճիհր նահապետ ազգին Ռշտունեաց և զՎահան նահապետ Ա-մատունեաց։ Բայց յաղագս հաւատոց Միհրանայ և աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջի»։ Խորենացին, զոր խոստացաւ՝ կը կատարէ յաջորդ. գլխով։

ՁԶ. գլուխ Խորենացւոյն ունի Վրաց դարձին պատմութիւնն ի ձեռն կնոջ ուրումն Նունեայ, որ որպէս թէ էր յընկերաց Հռիփսի-մեանց։ Պատմութիւնն, ինչպէս յայտնի է ի նշանացն, որովք լի է՝ է զրոյց.—«Կին ոմն անուն Նունէ, յընկերաց սրբոց Հռիփսի-մեանցն ի ցրուելոցն, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ, ի նոցա քաղաքն նախագահ, յոյժ ճգնութեամբ ստա-ցեալ շնորհս բժշկութեան. որով և զբազում ախտաժէտս բժշկեալ, և գլխովին զկին Միհրանայ առաջնորդին Վրաց։ Վասնորոյ հարցեալ զնա Միհրանայ, եթէ որո՛վ զօրութեամբ առնես զայս սքանչելիս՝ ուսաւ զքարոզութիւն Աւետարանին Քրիստոսի, և ախորժելով լուեալ՝ պատմեաց իւրոց նախարարացն հանդերձ գովեստիւ։ Եւ իսկոյն ե-հաս ի նա լուր սքանչելեացն որ եղեն ի Հայս ի թագաւորն և ի նախարարսն, և զընկերացն երանելոյն Նունեայ. ընդ որ հիացեալ՝ զրուցեաց երանելոյն Նունեայ, որով և ստուգագոյն ևս տեղեկացաւ զամենայն ոճով»։

Խորենացին ըսելով վասն Նունեայ, թէ «առաքելուհի եղեալ քարոզեաց ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց և Կասբից մին-չև ի սահմանս Մասքթաց»՝ կը յաւելու, «որպէս ուսուցանէ քեզ Ա-գաթանգեղոս»։ Սակայն զարմանալի է, որ Ագաթանգեղոս զքարոզու-թիւնն ի Կղարջաց մինչև ի սահմանս Մասքթաց, այլովքն հան-

գերձ՝ կու տայ Գրիգորի (Ագաթ. ԾԻ.)։ Նունեայ, իբրև առաքելուհւոյ Վրաց՝ անունն անգամ չկայ առ Ագաթանգեղոսի։

Ըստ ՁԷ. գլխոյ Խորենացւոյն՝ Տրդատ թէպէտ կը յաղթէ ի պատերազմին ընդդէմ հիւսիսականաց, բայց որովհետև կորուստ մեծ ունեցաւ՝ կը փախնայ առանձինն կռուել ընդ Տապհոյ, մինչև կը հասնի զօր Հռոմայեցի, որոց օգնութեամբ Տրդատ կը մտնէ յԱսորեստան, և յետ դարձուցանելոյ զերկիրն յաւեր և յապականութիւն՝ կ'երթայ Պարսից հիւսիսային կողմերն, ուր կու գայ առ նա ազգական նորա Կամսար, Կարնան ցեղէն.—«Բայց Տրդատայ թէպէտև զյաղթութիւն ստացեալ էր, այլ ի հարկանելոյ զօրուն և ի բազում անկելոց նախարարացն՝ զանգիտեաց ինքեամբ յատուկ մարտնչել ընդ Տապհոյ, մինչև եհաս բազմութիւն զօրուն Հռոմայեցւոց, որք ընդ Ասորեստան յարձակեցան. և ի փախուստ Տապհոյ՝ դարձան և յաւարի առին զամենայն երկիրն։ Քանզի և Տրդատ միահամուռ հուրովքն, և որք ընդ իւրովք էին զօրքն, ընդ հիւսիսային կողմանս իշխանութեանն Պարսից դիմեաց տարեկան չուաւորութեամբ։ Յայնժամ գայ առ նա ազգականն իւր և հարազատ Կամսար»։

Խորենացին շատ բան կը պատմէ զԿամսարականաց, զորս կը դնէ Պահլաւ ցեղէ, ուստի և ազգական Պարթևաց և Արշակունեաց։ Թողլով ինչ որ կը պատմէ Խորենացին, առնլով չենք գիտեր ինչ աղբերէ, թերևս ի Խոռոհբուտայ, Կամսարայ նախնիներուն վրայ (Խոր. Բ. ԻԷ, ԻԸ, ՀԴ.), թողլով նաև Կամսար անուան ստուգաբանութիւնն (Խոր. Բ. ՁԷ.)՝ սա միայն յիշենք իբրև ճշմարիտ, թէ Կամսարականք էին արդարև Պահլաւ, ուստի և ազգականք Արշակունեաց։ Ալանայոզան Պահլաւ զօրավար Տապհոյ (Բուզ. Դ. ԼԸ.)՝ զԱրշակ, որ կ'ազաչէր զնա թողուլ փախչել՝ կը յանդիմանէ այսպէս. «Դու ոչ խնայեցեր յազգայինսն մեր Կամսարականս, որ առաւել քան զքս էին քո հարազատագոյնք դենի ձեր մասամբ և աշխարհաւ համարնակաւ. զիարդ լինէին ակն ունիցիս ի քեզ խնայել, հեռացեալ գենիւ և բնակութեամբ. և որով օրինակաւ ես ի քոյն յուսալով բարիս, որ անյայտ է թէ առից՝ զգտեալսն յիմմէ թագաւորէն կորուսանիցեմ» (Խոր. Գ. ԼԴ.)։ Թէպէտ Խորենացին է որ կը դնէ այս յանդիմանութիւնն ի բերան Պահլաւ զօրավարին, և Բուզանդ, որ գիտէ զԱլանայոզան Պահլաւ ի տոհմէ Արշակունեաց, չունի այս պարագայն՝ բաւական է սակայն ցուցնելու, թէ Կամսարականք համարուած էին ազգական Արշակունեաց։ Ըստ Բուզանդայ՝ այս ցեղ ոչ թէ առ Տրդատաւ եկաւ ի Հայս, ինչպէս կը պատմէ հոս Խորենացին, այլ կար յառաջագոյն իսկ քան զՏրդատ։ Առ Խոսրովաւ որդւով Տրդատայ Կամսարականք էին ի համարի հին աւագ նախա-

բարութեանց, և է ի նիզակաց խնամացեալ ընդ ուսաց նախարարաց, որպիսի էին Սիւնիք և Մամիկոնեանք (Բուզ. Գ. ԺԱ.)։

Այս գլխոյն (ՁԷ.) վերջը կը յաւելու Խորենացին. «Բայց Տրդատայ հաստատեալ իւր զեւթնպարսպեանն Եկղատան երկրորդ, և վերակացուս յինքենէ թողեալ՝ դառնայ ի Հայս։ Քանզի Շապուհ, կը յաւելու, աղաչեաց զԿոստանդիանոս զպաղթողն՝ խնդրել զհաշտութիւն, և հաստատել խաղաղութիւն միջանջենաւոր. զոր արարեալ սրբոյն Կոստանդիանոսի», այլովքն հանդերձ։

Ինչ որ Խորենացին Գ. դպրութեան ՁԴ. գլխէն մինչև ի գլուխն ՁԸ. կը պատմէ Տրդատայ պատերազմներուն վրայ ընդ Շապհոյ՝ են շփոթ և լի պատմական և ժամանակագրական սխալներով, ուստի չունին ամենևին պատմական ստուգութիւն։ Նախ՝ զՇապուհ կը համարի որդի Արտաշրի (Գլ. ՁԶ. և ՁԷ.)։ Շապուհ որդի Արտաշրի, ըստ ժամանակակից պատմութեան՝ է կրկին. մին՝ Շապուհ Ա. որդի Արտաշրի առաջնոյ (240—271), միւսն՝ Շապուհ Գ. որդի Արտաշրի երկրորդի (385—389). երկոքին ևս չեն յամարիր Տրդատայ ժամանակին, որ է 287 կամ 297 — 337։ Տրդատայ ժամանակակից Շապուհ՝ է Շապուհ Բ. որդի Որմզդի Բ, երկայնակեաց (309—381), որ կը հանդիպի ոչ միայն Կոստանդիանոսի, այլև Կոստանդայ, Յուլիանու, Յովիանու, Վաղեսի և Թէոդոսի մեծի, և մեր թագաւորներէն՝ Տրդատայ մեծի, Խոսրովու Բ, Տիրանայ Բ, Արշակայ, Պապայ և Վարազդատայ, և ունի մեծ դեր ի պատմութեան վերջին ժամանակին Արշակունեաց։ Երկրորդ՝ միջանջենաւոր խաղաղութիւնն, զոր կը յիշէ Խորենացին՝ եղաւ առ Դիոկղետիանոսիւ յետ յաղթութեանն Գաղերիոսի (297) և տևեց Կոստանդիանոսի և Տրդատայ բոլոր ժամանակը։

Այս ժամանակագրութեան նայելով՝ սխալ է նաև այն որ կ'ըսէ Խորենացին, թէ յերթալն Տրդատայ առ Կոստանդիանոս՝ Շապուհ գրգռեց զհիւսիսականս յարձակել ի վերայ Հայոց, ևն. քանզի Տրդատայ ճշմարիտ երթն առ Կոստանդիանոս (եթէ երբէք եղաւ)՝ եղած է 307-ին, մինչդեռ չկար Շապուհ. իսկ երկրորդ երթն ի Հռոմ ըստ Ագաթանգեղոսի՝ չէ ճշմարիտ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Տեսանք նաև, թէ հիւսիսականաց յարձակումն առ Տրդատաւ՝ շփոթուած է ընդ յարձակմանն հիւսիսականաց, որ եղաւ առ Տրդատաւ Տակիտոսի, այն է առ Արտաշիսիւ Բ. ըստ Խորենացւոյն։ Այս պատմական տեսութենէն կը հետևի, և կրնանք ըսել ստուգութեամբ, թէ պատերազմունք, զորս կը համարի եղած Խորենացին առ Տրդատաւ ընդ Պարսս և յորս կը խառնէ զՀռոմայեցիս, այն է զԿոստանդիանոս՝ չունին ամենևին ստուգութիւն, և հաւանական է թէ

առնուած են ասորի կամ պարսիկ աղբերէ, թերևս ի Խոռոհբուտայ, որ էր դպիր Շապհոյ ըստ Խորենացւոյն, և գերեկցին նորա Բարսումայի պատմութենէն, զորոց վաւերականութիւնը կասկածելի կ'ընէ ինքն իսկ Խորենացին ասելով, թէ էին առասպելախառն (Խոր. Բ. Հ.)։

Գալով եօթնպարսպեան Եկբատանայ՝ կ'ըսենք, թէ երկու Եկբատանք կը յիշուին ի պատմութեան, մին ի Մարս, և միւսն ի Պարսս, երկոքին ևս հարիւրաւոր ամօք յառաջ քան զՏրդատ։ Չէ ամենևին հաւանական, թէ Տրդատ յետ պատերազմին ընդ Շապհոյ (դնելով այն պատերազմը ճշմարիտ), գնաց ատարեկան չուառութեամբ», իւր և հռոմայեցի զօրօք—«միահամուռ իւրովքն և որք ընդ իւրովք էին զօրքն (Հռոմայեցւոց) — ընդ հիւսիսային կողմանս իշխանութեանն Պարսից», այն է ի կողմանս Բակտրիոյ (Քուշանք ըստ Հայոց), և շինեց նոր իմն եօթնպարսպեան Եկբատան, զոր յանձնելով վերակացուաց՝ դարձաւ ի Հայս։ Իբրև գործ Տրդատայ՝ քան զայս ստոյգ է շինուածն ի Գառնի.—«Չայսու ժամանակաւ կատարէ Տրդատ զշինուած ամրոցին Գառնոյ, զոր որձաքար և կոփածոյ վիմօք, երկաթագամ և կապարով մածուցեալ. յորում շինեալ և տուն հովանոց, մահարձանօք, սքանչելի գրօշուածովք, բարձր քանդակաւ, ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ. և գրեալ ի նմա զյիշատակ իւր հելլենացի գրով» (Խոր. Գլ. Ղ.)։ Կը մնայ գիտել, թէ ինչ էր շինուածն Տրդատայ։ Գիտենք թէ Գառնի էր ամրոց շինեալ ի վաղուց, ուր էին հռոմայեցի պահապան զօրք առ Տիբերիւ, և ուր ամրացաւ Միհրդատ Վիր (Սանատրուկ) յերեսաց եղբօրորդւոյն իւրոյ Հռադամիզդայ (Երուանդ), ըստ հռոմէական պատմութեան։ Ուստի շինուածն Տրդատայ կը թուի լինել իւր քեռ Խոսրովիդխտոյ համար ամարանոց, և զոր կը յիշեն յետին պատմիչք, Կիրակոս և ընդարձակողն Սամուէլի, կոչելով Թագտ Տրդատայ։

Խնդիր է, թէ ուստի՞ կ'առնու Խորենացին այս պատմութիւնը, մանաւանդ ինչ որ կը պատմէ նոյն գլխոյն մէջ զԿամսարայ։ Որովհետև Խորենացին ստէպ կը յիշէ զԿամսարականս իբրև զմին ի Պահլաւ ցեղից, յորոց էին Պարթև թագաւորք յԱրտաւանայ Գ.-է և այսր, ինչպէս նաև մերքն ի Տրդատայ Տակիտոսի (Արտաշէս Բ.) մինչև ի վախճան հարստութեանն Արշակունեաց՝—հաւանական կը թուի, թէ Խորենացին ունէր ի ձեռին Պահլաւ ցեղերուն վրայ գրըուած մը պարսկերէն, զոր կ'ակնարկէ իսկ ի գլուխն ՀԵ. յասելն զՊերոզամատ. «զմանէ բիւր առասպելս յօդեցին Պարսք». պարսկերէն աղբիւր կ'ակնարկէ նաև առասպելական պարսիկ անունն Կամսար։

Չէ անհաւանական թէ այս աղբիւր Խորենացւոյն էր Խուռհբուատայ մատեանն կամ նմին նման գրուած մի կէս վկայաբանական։

ՁԲ. գլուխն է զԼիկինիոսէ (Լիկիանէս), զոր որպէս թէ Կոստանդիանոս կ'ընէ երկրորդ իւր, տալով նմա զքոյր իւր կնութեան։ Բայց Լիկինիոս կը դրժէ իւր խոստման՝ տալոյ ազատութիւն քրիստոնէից, յարուցանելով սաստիկ հալածումն և սպաննել տալով զբազումս, ընդ որս զԳլափիւռա կոյս և զԲարսեղ եպիսկոպոս Ամասիայ, որոյ վկայաբանութենէն առած է Խորենացին զիւր պատմութիւնն զԼիկինիոսէ, ինչպէս կը հաստատէ Ա. Լա Գարիէր (տես «Հանդէս ամսօրեայ» 1893, մայիս)։ Ըստ Խորենացւոյն՝ Լիկինիոս կը նիւթէ գաղտ նենգութիւն ընդդէմ Կոստանդիանոսի, բայց մատնուելով ի ձեռս նորա՝ կը ղրկուի ի մեռաղս ի Գաղղիա.—«Ի բառնալ Աստուծոյ զբռնաւորսն ամենայն յերեսաց Կոստանդիանոսի՝ մեծարեաց նա զԼիկիանոս մեծութիւն յոյժ, և ետ նմա կնութեան զքոյր իւր ոչ համամայր, ծիրանեօք և պսակաւ զարդարեաց զնա, և յերկրորդականս հաստւցեալ պատիւս՝ արքայ ամենայն արևելից կացոյց։ Բայց զոր աստուածային բանն առ Եբրայեցւոցն անհնարին համարեալ չարութեանն փոփոխումն՝ նոյն և աստանօր պատահի. ընձու անկարելի է զխայտուցսն փոխել և Եթովպացւոյ զթխութիւն, նայնպէս մարդոյ ամբարշտի զբարսն։ Քանզի նախ առ ի հաւատսն գըտանի դրժող, և երկրորդ՝ առ բարեգործն իւր՝ ապստամբ։ Յարոյց հալածանս եկեղեցւոյ, և նենգութիւն գաղտնի ընդդէմ Կոստանդիանոսի. նաև չարիս բազմազանս ամենեցուն հասոյց որ ընդ իւրով իշխանութեամբն էին, ցանկասէրս այս և գարշելի ալևոր, ներկուածոյ ունելով զհերս. որ և զկին իւր ի մեծ նեղութիւն արգել սակս արփութեան երանելոյն Գլափիւռայ, վասն որոյ սպան զսուրբն Բասիլիոս Ամասիոյ Պոնտացւոց եպիսկոպոս։ Եւ իբրև յայտնեցաւ դաւն, և գիտաց, թէ նմա լուռ ոչ լինի Կոստանդիանոս՝ ժողովեաց զօրս ընդդիմանալ պատերազմաւ»։ Խորենացւոյն կողմանէ յաւելուած է սա մասը. «Եւ ցրտացեալ ի սիրոյն Տրդատայ մեր թագաւորի՝ ակնածէր որպէս արդարև ի թշնամւոյ, քանզի գիտէր եթէ ատելի է արդարոյ ամենայն ամբարիշտ»։ «Իսկ իբրև եկն յաղթողն Կոստանդիանոս՝ մատնեաց Աստուած ի ձեռս նորա զԼիկիանոս. յոր խնայեալ որպէս ի ծերունի և ի քեռայր՝ ետ տանել ի Գաղղիուս հանդերձ երկաթի կապանօք դնել ի մեռաղս, զի աղօթեսցէ առ Աստուած որում մեղաւն, թերևս երկայնամիտ լիցի առ նա»։

Սակայն գիտենք Հռոմայեցւոց պատմութենէն, թէ Լիկինիոս կարգեցաւ կայսր ո՛չ թէ Կոստանդիանոսէ, այլ Գաղերիոսէ (307)։ Մինչև 314, Սևերոս Մաքսիմիանոս, Գաղերիոս, Մաքսենտիոս,

Մաքսիմինոս, հակառակորդք միմեանց՝ վերջան պատերազմաւ կամ մահուամբ. մնացին Կոստանդիանոս և Լիկինիոս, որք երկիցս գըր-գռեցան ի պատերազմ, 314 և 322. յերկրորդումն Լիկինիոս յաղ-թուելով հրաժարեցաւ յիշխանութենէ, և ըստ խնդրոյ կնոջ նորա Կոստանդեայ, քեռ Կոստանդիանոսի՝ տրուեցաւ նմա բնակութիւն Թեսաղոնիկէ, բայց յետ սակաւուց սպանուեցաւ (324)։

Նոյն ՁԸ. գլխոյն վերջը կը պատմէ Խորենացին հարևանցի իմն Կոստանդնուպոլսի շինութիւնը, որ չունի վերաբերութիւն մեզ։ Ի գլուխն ՁԹ. նոյնպէս համառօտիւ կը յիշէ զժողովն Նիկիոյ, որոյ կարևորագոյն մասն է վասն մեր՝ Արիստակիսի ղրկուիլն ի ժողովն։ Ագաթանգեղոս կը պատմէ Արիստակիսի երթն համառօտիւ այսպէս. «Ապա յետ այսորիկ հրաման եղ մեծ կայսրն Օգոստականն Կոստան-դիանոս՝ ժողովել ամենայն եպիսկոպոսաց ի քաղաքն Նիկիացւոց։ Յայնժամ մեծ արքայն Տրդատ և սուրբ կաթողիկոսն Գրիգորիոս հանդերձեցին և արձակեցին զՌըստակէս, որ երթեալ հասանէր ի ժողովն մեծ Նիկիայ ընդ եպիսկոպոսսն ամենայն, ուր ամենայն տիեզերացն կարգեցաւ ընդունելութեան աւանդութեան հաւատքն». և իսկոյն կը յարէ զդարձն Արիստակիսի ի ժողովոյն—«Իսկ երա-նելին Ռըստակէս դայր հասանէր պայծառ ծագեալ հաւատովքն և հաստատուն աստուածահաճոյ Նիկիական կանոնօքն երևեալ ի Հայ-աստան երկրին. առաջի դնէր թագաւորին և կաթողիկոսին սրբոյ զբերեալ աւանդութիւնսն. որով սրբոյն Գրիգորի ի նոյն լուսաւո-րական կանոնսն յաւելեալ՝ առեալ զիւր վիճակն զՀայաստան երկիրն պայծառացուցանէր» (Ագաթ. ՃԻԷ.)։ Ըստ Խորենացւոյն՝ որպէս թէ Կոստանդիանոս կը հրաւիրէ զՏրդատ երթալ ի ժողովն հանդերձ Գրիգորիւ. բայց երկոքին ևս կը հրաժարին, Տրդատ՝ քաղաքական պատճառաւ, այսինքն առ երկիւղի ի Շապհոյ, իսկ Գրիգոր՝ առ խոնարհութեան, որպէս զի չպատուէր ի ժողովոյն իբրև խոստո-վանող։ Ուստի կը ղրկուի Արիստակէս, կրտսեր որդին Գրիգորի, իբ-րև փոխանորդ նոցա, այսինքն Տրդատայ և Գրիգորի. (թէպէտ Արիս-տակէս կ'ընդունուի ի ժողովոյն իբրև եպիսկոպոս մեծին Հայոց ընդ իրաւասութեամբ մետրապոլտին Կեսարեայ, և ոչ իբրև հրա-ւիրեալ փոխանորդ)։ Ահա բանք Խորենացւոյն. «Յայնժամ գայ հա-սանէ հրովարտակ ինքնակալին Կոստանդիանոսի առ մեր արքայն Տրդատ, զի զսուրբն Գրիգոր առեալ ընդ իւր ի ժողովն երթիցէ. զոր ոչ առ յանձն Տրդատ։ Քանզի լուեալ էր զխնամանալն Շապհոյ ընդ Հնդկաց թագաւորին և ընդ արևելեանն Խաքանայ... և ի կաս-կածի եղեալ, զի մի արդեւք պայմանին ստիցէ ըստ սովորութեան հեթանոսութեանն՝ վասն այնորիկ ոչ եթող առանց իւր զաշխարհս։

Բայց և ոչ սուրբն Գրիգոր հաւանեցաւ երթալ, զի մի զառաւել պատիւն վասն խոստովանողական անուանն ի ժողովոյն կրիցէ, որպէս զի այսպէս փափաքանօք և մեծաւ փութով կոչէին։ Այլ նոքա առաքեն փոխանորդ իւրեանց զԱրիստակէս, հանդերձ ճշմարիտ խոստովանութեամբ երկոցունց՝ գրով»։ Խորենացին որպէս թէ կամելով լնուլ Ագաթանգեղոսի թերին՝ կը յաւելու հրաւէրը, և Տրդատայ և Գրիգորի հրաժարման պատճառներն երթալու ի ժողովն։ Սակայն չէ հաւանական թէ Կոստանդիանոս հրաւիրեց զՏրդատ ի ժողովն Նիկիայ, որպէս թէ արքայաժողով էր այն. չէր նաև գործ Կոստանդիանոսի հրաւիրել զԳրիգոր. եպիսկոպոսին Հայոց պարտքն էր երթալ անձամբ, և Գրիգորի հրաժարելոյն պատճառը—եթէ ճշմարիտ է հրաժարելն—զոր կը բերէ Խորենացին՝ չէ բանաւոր։ Արդարև զարմանալի է. Գրիգոր, որ ըստ Խորենացւոյն առ երկիւղի պատուելոյ իբրև խոստովանող կը խորշի երթալ ի Նիկիա՝ ըստ նոյն Խորենացւոյն չխորշեցաւ երթալ ընդ Տրդատայ ի Հռոմ առ Կոստանդիանոս և առ Սեղբեստրոս։ Թերևս Գրիգորի չերթալուն պատճառն ի ժողովն այն էր, որ երթալ ճգնելու համար ի լերինս, ինչպէս կամի վկայաբանութիւնն (Ագաթանգեղոսի)՝ արդէն հրաժարած էր նա եպիսկոպոսութենէն, դնելով փոխանակ զիւր որդին Արիստակէս կամ Ռըստակէս, կամ թերևս մեռած իսկ էր (325)։ Այս կէտին պիտի գանք յետոյ։ Խորենացին ի պատմութեան աստ երթին Արիստակեայ ի ժողովն կը պատմէ կատարուած երևելի նշան, ինչպէս կ'երևի, ի հանդէս մեծի սրբութեանն Արիստակեայ. —«Որոյ (Արիստակեայ) երթեալ հասանէր մեծին Ղևոնդի (այսինքն Կեսարիոյ եպիսկոպոսին) և հանդիպի յայնմ ժամու՝ զի մկրտէր զԳրիգոր զհայր Գրիգորի աստուածաբանի. որ իբրև ել ի ջրոյն, շուրջ լոյս փայլատակեալ զնովաւ. զոր ոչ ոք ի բազմութենէն ետես՝ այլ միայն Ղևոնդիոս որ մկրտէրն, և մերն Ռըստակէս, և Եւթաղ Եդեսիոյ, և Յակոբ Մծբնայ, և Յոհան Պարսից եպիսկոպոս, որք նոյն շաւղօք ուղևորէին ի ժողովն» (Խոր. Բ. ՁԹ.)։ Ձիարդ և իցէ՝ երթալն Արիստակեայ ի ժողովն է ճշմարիտ այնու մանաւանդ, որ ըստ յոյն և լատին օրինակաց գործոց ժողովոյն՝ յանուանէ յիշուած է Արիստակէս իսկ և իսկ զկնի անուան մետրապոլտին Կեսարիայ։ (Գաթրճ. Պտմ. Տիեզ. հտ. Բ. էջ 480)։ Բայց կարգ պատմութեանն կը պահանջէ խօսել նախ զճանապարհորդութենէն ի Հռոմ։

Ճանապարհորդութիւնն Տրդատայ ի Հռոմ հանդերձ Գրիգորիւ՝ Ագաթանգեղոսի պատմութեան գլխաւոր կէտերէն մին է։ Ստուգաբան պատմիչն դարձին Հայոց երկայն կը պատմէ այս ճանապարհորդութիւնը։ Տրդատ լսելով Կոստանդիանոսի դարձն ի քրիստո-

նէութիւն՝ խսկոյն կ'առնու զԳրիգոր, զԱրիստակէս, զԱղբիանոս, նաև չորս բդեշխներն և նախարարներէն շատերն իբր եօթանասուն հազար զօրօք, աճապարելով ընդ ծով և ընդ ցամաք՝ կ'երթայ ի Հռոմ և կ'ընդունուի մեծ պատուով Կոստանդիանոսէ և Սեղբեստրոսէ։ Աւելորդ չենք համարիր հոս յուշ առնել ընթերցողաց, թէ այս Տրդատայ ճանապարհորդութիւնն ի Հռոմ առ Կոստանդիանոս՝ անյաջող նմանութիւն է ճանապարհորդութեանն այլոյ ուրուք Տրդատայ ի Հռոմ առ Ներոն իբր երեք հարիւր ամօք յառաջ։ Զհարդ և իցէ՝ Տրդատ իւրովքն կը հասնի ի Հռոմ։ Ըստ Ագաթանգեղոսի՝ երկու թագաւորք կը պատմեն իրարու Աստուծոյ բարերարութիւնն առ նոսա։ Տրդատ կը պատմէ, թէ ինչպէս փոխուեցաւ ի կերպարանս անասնոյ. կը պատմէ նաև Հռիփսիմեանց նահատակութիւնը, և կը ցուցնէ զԳրիգոր, յորոյ ձեռն եղած էին այնչափ սքանչելիք։ Կոստանդիանոս իյնալով Գրիգորի առջև՝ կ'օրհնուի ի նմանէ, և կը մեծարէ զնա մեծ պատուով իբրև խոստովանող Քրիստոսի, և սէր մեծ ցուցնելով Տրդատայ իբրև եղբօր և հաւատակցի՝ դաշինս կը կռէ ընդ նմա։ Եւ որովհետև Հռիփսիմեանք, ըստ Ագաթանգեղոսի, էին կայսերական տանէն—զՀռիփսիմեայ ասէ, թէ էր «ի թագակալ տոհմէ» (Ագ. ԺԳ.)՝—Կոստանդիանոս իբրև ծանօթ նոցա՝ կը պատմէ նոցա վարուց ազնուականութիւնը և Աստուծոյ մեծ զօրութիւնը, որ տուաւ նմա յաղթել այնչափ թշնամեաց։ Ի վախճանի Տրդատ բոլոր բազմութեամբ որ ընդ իւր էին՝ մեծամեծ պարգևօք հրաժարելով կայսրէն և մեծամեծներէն՝ ոսկիապատ կառօք, և ի ճանապարհին հանդիպելով քաղաքաց քաղաքաց, և ընդունելով պատիւ մեծ ամենէն՝ կու գայ ի Վաղարշապատ.—«Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ թագաւորեաց Կոստանդիանոս որդի Կոստանդեայ արքայի... և հաւատաց նա յԱստուած արարիչ երկնի և երկրի։... Իբրև լուաւ զայս ամենայն մեծ արքայն Հայոց՝ խորհուրդ առնոյր վասն ճանապարհացն այնոցիկ. հանդերձեալ կազմէր, առնոյր ընդ իւր զմեծ արքեպիսկոպոսն Գրիգոր և զնորուն որդին զԱրիստակէս, և զեպիսկոպոսն Աղբիանոս. և ի զինուորական կողմանէն՝ զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին որ բդեաշխքն կոչին... և զմեծ իշխանն Անգեղ տան, և զթագադիրն ասպետն, և զսպարապետն մեծ, և զիշխանն Մոկաց, և զիշխանն Սիւնեաց, և զիշխանն Ռշտունեաց, և զիշխանն Մաղխազութեան տանն, և զՇահապն Շահապիվանի, և զիշխանն սպասկապետութեանն, և այլ բազում մեծամեծօք և եւթանասուն հազարաւ ընտիր զօրուն հանդերձ՝ խաղայր գնայր յԱյրարատ գաւառէ ի Վաղարշապատ քաղաքէ՝ անցանել ի սահմանս Յունաց։... Ընդ ցամաք և ընդ ծով փու-

թացեալ աճապարէին… Երթային ի թագաւորական քաղաքն Հռոմայեցւոց… զոր իբրև լուաւ աստուածակարգ թագաւորն պատուական աթոռոյն Կոստանդիանոս և հայրապետն մեծ արքեպիսկոպոսն աշխարհամուտ դրանն որում անուն կոչէր Սեղբեստրոս, որք մեծաւ սիրով պատիւ արարեալ ընդ առաջ ելանէին։… Ապա զարմացեալ աստուածասէր կայսրն Կոստանդիանոս՝ հարցանելով զարքայն Տրդատ, թէ զիա՞րդ, որպէս եղեն առ քեզ Աստուծոյ սքանչելիքն։ Իսկ նա եկաց պատմեաց առաջի կայսերն զամենայն արարեալսն Աստուծոյ առ նա զբարերարութիւնսն։ Եւ զայն ի պատուհասին լինել ի կերպարանս անասնոցն ոչ ամօթ համարեցաւ պատմել նմա, և զհամբերութիւն նահատակեալ վկայիցն քաջութեան… և յանդիման ցուցանէր կայսերն զտարեալն ընդ իւր զԳրիգորն, եթէ Այս այն այր է, ասէ, յորոյ ի ձեռն ծանեաք մեք զմարդասիրութիւնն Աստուծոյ, և զնորուն ժուժկալութիւն նշանագործ զարմանալութեանցն։ Վասնորոյ զարմացեալ կայսրն Կոստանդիանոս՝ խոնարհեցուցեալ զանձն անկանէր առաջի Գրիգորի, զի օրհնեսցի ի նմանէն. և բազում վայելուչ մեծարանօք պատիւ արարեալ նմա իբրև խոստովանողի Քրիստոսի ըստ արժանաւորութեան նորա։ Սոյնպէս և արքային Տրդատայ իբրև եղբօր սիրելւոյ սէր ցուցեալ ուրախութեամբ մեծաւ, մանաւանդ վասն աստուածածանօթութեան նորա տուեալ՝ դաշինս կռէր ընդ նմա, միջնորդ կալեալ զհաւատսն որ ի Տէր Քրիստոսն էր. զի անշուշտ մինչ ի բուն զհաւատարիմ սէրն ի մէջ թագաւորութեանցն պահեսցեն։… Ապա և կայսրն Կոստանդիանոս սկսաւ պատմել նմա վասն անզուգական վարուցն նոցա (Հռիփսիմեանց) զոր յառաջագոյն գիտէր, մինչդեռ անդ էին յիւրեանց աշխարհին, եթէ որպէս հաճոյ վարուքն էին, կամ որպէս ազնուականք ի մարմնաւոր կողմանէ տոհմաց իւրեանց. և զգործսն զօրութեան յաղթութեանն Աստուծոյ նմա տուելոյ պատմէր, առ ամենայն թշնամիսն ճշմարտութեան յաղթող երևեալ։… Ապա յետ այսորիկ մեծարեալ լինէին դարմանօք, մեծապատիւ շքեղութեանն կարգօք յարքունեացն և յեկեղեցեացն և ի պատուական իշխանաց քաղաքին, և մեծամեծ պարգևօքն պատուեալ սիրով, հրաժարեալ ի ծիրանափառ օգոստականացն և ի սրբոյ կաթողիկոսէն, ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն և յերևելի իշխանաց քաղաքին, և ամենայն իրօք աջողելովք՝ ելանէին յոսկիապատ կառս արքունատուրս, և մեծաւ շքաւ և բազում վայելչութեամբ ունէին զճանապարհս արքունականս, և ամենայն քաղաքաց պատահելոց պայծառագոյն լինէին, և մեծամեծս ըստ արժանողութեանն արքայութեանն մեծամեծ պատուեալ անդստին, մինչև գային հասանէին յերկիրն Հայ-

ոց յԱյրարատ գաւառ ի Վաղարշապատ քաղաք ի Հանգստակայս-սրբոցն։ Եւ բերէին զպարգեւս բերեալս անդստին, զոսկին և զար-ծաթն և զպատուական կարասին, ի նուէրս սպասու Աստուծոյ եկեղեցւոյն և ի տունս նուիրաց սրբոց վկայիցն դնէին. նաև զտու-եալ զոսկի սպասս կայսերն ի նոյն Հանգիստ սրբոցն դնէին» (Ագաթ. (ձԻԵ, ձԻԶ.)։

Պատմութեան պարագաներէն յայտնի է, թէ այս երթն Տըր-դատայ և Լուսաւորչին ի Հռոմ՝ է լոկ կեղծիք։ Գաթըրճեան թէ-պէտ կը խոստովանի այս պատմութեան պարագաներէն գէթ ոմանց անտեղութիւնը՝ սակայն կը համարի ճանապարհորդութիւնն ըստ էութեան ճշմարիտ, մանաւանդ թէ հարկ իսկ. ի կողմանէ Տրդա-տայ՝ հաստատելու համար ընդ Կոստանդիանոսի հին ուխտը, որ թուլացեալ էր գէթ ըստ մասին Մաքսիմինոսի հետ եղած պատե-րազմին պատճառաւ, և Գրիգորի կողմանէ՝ ցուցնելու համար զիւր հպատակութիւնն եկեղեցւոյ գլխոյն, Հռոմայ եպիսկոպոսին գլխա-ւորութեան՝ համեմատութեամբ յետին վարդապետութիւնը տանելով յառաջ մինչև ի ժամանակս Լուսաւորչին.— «Հարկ էր, կ'ըսէ, թա-գաւորին Հայոց դաշնաւորի Հռոմայեցւոցն՝ նորոգել կամ կռել դա-շինս ընդ նորոց գլխաւորաց պետութեանն (Կոստանդիանու և Լի-կիանու), մանաւանդ զի յառաջ իսկ քան զսակաւ մի ստիպեալ էր տալ մարտ պատերազմի ընդդէմ հռոմէական զօրուն առաջնորդե-լոյ ի Մաքսիմինեայ Դայայ... և աթոռակալն առաքելոյն Հայոց տալը ընծայութիւն հպատակութեան յաջորդի գլխոյն առաքելոց»։ Ընդունինք թէ հարկ էր Տրդատայ հին դաշնակցութիւն մը որ թուլ-ցած էր՝ նորոգել. բայց միթէ հա՞րկ էր այս պատճառաւ 70,000 զօրօք և գրեթէ բոլոր նախարարաց բազմութեամբ երթալ մինչև ի Հռոմ։ Իսկ Գրիգորի համար ո՞ւր գտած է Գաթըրճեան, թէ գնաց ի Հռոմ՝ «տալ ընծայութիւն հպատակութեան յաջորդի գլխոյն ա-ռաքելոց»։ Կռելն դաշինս Տրդատայ ընդ Կոստանդիանոսի արդարև կայ յիշուած առ Ագաթանգեղոսի. բայց չկայ ամենևին յիշուած, թէ Գրիգոր տուաւ «ընծայութիւն հպատակութեան» Սեղբեստրոսի՝ իբրև գլխոյ եկեղեցւոյ, կամ խնդրել ի նմանէ վաւերացունել զե-պիսկոպոսութիւն իւր։ Գաթըրճեան կը թուի շփոթած զԱգաթան-գեղոս ընդ համբաւեալ Թղթոյն դաշանց, զորոյ անվաւերութիւնը գիտէ ինքն իսկ Գաթըրճեան (Տիեզ. Պատ. Հտ. Բ. էջ 180, ծան. 1)։

Խորենացին ևս (Բ. ՁԴ.) կու տայ Տրդատայ «գնալ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս», յետ դարձին նորա ի քրիստոնէութիւն, բայց ոչ բազմութեամբ զօրաց և նախարարաց, և ոչ ընդ Գրիգո-րի. իսկ զընծայութենէ հպատակութեան այս վերջնոյն առ Սեղ-

բեստրոս իբրև առ գլուխ եկեղեցւոյ՝ չկայ ամենևին յիշատակութիւն առ Խորենացւոյն։

Գաթըրճեան ունի ուրիշ վկայութիւն աղերսի իրիք Հայոց ընդ եպիսկոպոսապետին Հռոմայ անդէն իսկ ի սկզբան դարձին, այն է եպիսկոպոսաց նամակն առ Թէոդոս առ Եղիշէի։ Արդարև Հայք, ըստ Եղիշէի և ըստ Փարպեցւոյն, խնդրեցին օգնութիւն Թէոդոսէ Բ.-է նամակաւ. բայց երկու պատմիչք բազմօք կը տարբերին ի միմեանց։ Ըստ Եղիշէի՝ կը ղրկուի Ատոմ Գնունի հրովարտակաւ. զորոյ պատճէնը կը դնէ Եղիշէ.—«Ցայնմ ժամանակի զմի ոմն ի մեծամեծ նախարարացն, ի տոհմէն Գնունեաց Ատոմ, ճեպով առաքեցին յերկիրն արևմտից՝ ցուցանել զայս ամենայն խորհուրդ պղծաբիմաց թագաւորին արևելից, միանգամայն և պատմել զիւրեանց քաջութիւն արութեանցն, զոր գործովք կատարեցին, առ ոտն հարկանելով զհրամանն ահեղ, և մեծապէս սատակումն ի վերայ մոգացն հասուցանելով. խնդրել ի նմանէ օգնականութիւն սատարութեան, և եթէ նա կամեսցի՝ նմա իսկ մտանել ի ծառայութիւն։ Եւ այս է պատճէն հրովարտակին զոր գրեցին առ Թէոդոս կայսր. «Վասակ մարզպան և Ներշապուհ Ռմբոսեան հանդերձ սպարապետաւ և ամենայն մեծամեծ նախարարօքս՝ առ մեծանունդ Թէոդոս կայսր. բազմասցի ողջոյն մեր առ քեզ և ամենայն զօրաց քոց, որ խաղաղասէր մարդասիրութեամբ ձերով տիրէք ծովու և ցամաքի, և չիք ոք յերկրաւորացս՝ որ ձերում անարգել տէրութեանդ ընդդէմ դառնայցէ։ Որպէս մեք իսկ ունիմք զանսուտ յիշատակարանսն զառաջինն նախնեացն ձերոց. ունելով զԵւրոպէ՝ անցին և տիրեցին և Ասիացւոց կողմանցն ի սահմանացն Սեփրայ մինչև ի կողմանս Գադերովնի, և ոչ ոք գտաւ ստամբակեալ և ելանել ըստ ձեռն նոցա։ Եւ յայնչափ մեծ իշխանութեան՝ դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս տնուանէին։ Վասնորոյ և նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց ապրեալ սնաւ յերկրիդ Յունաց, և ի ձէնջ թագաւորեալ տիրէր հայրենի աշխարհիս, սոյնպէս և զհաւատսն որ ի Քրիստոս՝ ընկալեալ ի սուրբ եպիսկոպոսապետէն Հռովմայ, որ լուսաւորեաց զխաւարային կողմանս հիւսիսոյ. զոր և այժմ կամին ի մէնջ կորզել հանել խաւարասէր որդիքն արևելից…»։

Ըստ Փարպեցւոյն՝ նախարարք որ ղրկուեցան նամակաւ առ Թէոդոս՝ էին Վահան Ամատունի, Հմայեակ եղբայր Վարդանայ և Մերուժան եղբայր Աղանայ Արծրունւոյ. (յայսմ մասին Փարպեցին է ստոյգ. տես և Փարպ. 216, 219, 220, 246)։ Ահա Փարպեցւոյն

պատմութիւնը. «Եւ փաղփաղակի նամականի արարեալ առ կայսրն և առ ամենայն աւագանի դրանն Յունաց և առ այլ իշխանս... կնքէր նախ ինքն իշխանն Սիւնեաց Վասակ իւրով մատանեաւ, և ապա ամենայն տանուտեարքն Հայոց, և պատրաստեալ ճանապարհին Յունաց կազմէին զիշխանն տանն Ամատունեաց Վահան, որպէս զայր մտացի և խորհրդական, և զսուրբ սեպուհն զՇմայեակ, զեղբայր երանելի զօրավարին Հայոց Վարդանայ ի Մամիկոնէից տոհմէն, և զերանելին Մերուժան զեղբայր սրբոյն Աղանայ ի տոհմէն Արծրունեաց. յորոց ձեռն տուեալ զնամականին իշխանին Սիւնեաց Վասակայ և ամենայն նախարարաց աշխարհին Հայոց՝ յուղարկէին առ կայսր»: Ինչպէս կը տեսնուի՝ առ Փարպեցւոյն նախարարք որ ղրկուեցան առ Թէոդոս՝ են երեք. Ատոմ յիշուած չէ. առ Փարպեցւոյն չկայ նաև պատճէն նամակի: Դարձեալ ըստ Փարպեցւոյն՝ նամակ գրուեցաւ ոչ առ կայսր միայն, այլև առ հայ իշխանս, զորօրինակ առ բդեշխն Աղձնեաց և առ իշխանն Անգեղ տան, ի Ծոփս և ի Հաշտեանս և յԵկեղեաց, և առ մեծ սպարապետն Անտիոքայ:

Ըստ Եղիշէի՝ Թէոդոս կամեցաւ օգնել Հայոց, բայց մեռաւ. և յաջորդ նորա Մարկիանոս, ըստ խրատուն Անատոլեայ և Եղփարիոսի ասորւոյ մերժեց Հայոց խնդիրը. —«Եւ իբրև յանդիման եղեն —(ընդէր եղեն. պարտ էր ասել եղեւ, քանզի ըստ Եղիշէի՝ նամակը տանողն է մի ոք, Ատոմ)—մեծի թագաւորին և ընթերցան զգիր պաղատանաց Հայոց աշխարհին և զյիշատակարանսն նախնեացն՝ բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան, որ զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս գտանէին: Եւ մինչդեռ երանելին Թէոդոս հարցանէր զամենայն սինկղիտոսն և հնարս իրացն կամէր գըտանել խաղաղութեամբ, և հոգ տանէր մեծաւ յօժարութեամբ, զի մի եկեղեցիքն արևելից յափշտակեսցին յանօրէն հեթանոսաց՝ ի նմին ժամանակի անդէն փաղփաղակի հասանէր վախճան կատարածի կենաց նորա, և կարի չար խափանումն լինէր գործոյն օգնականութեան: Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս կայսր, և ի ձեռն վատթար արանց խրատտուացն իւրոց ծառայիցն, Անատոլեայ որ սպարապետն էր և Եղփարիոս ասորի—երկոքեան անարգք և վատթար արանց, միանգամայն և անաստուածք—ի նոցա բանս եկեալ թագաւորն՝ ոչ կամէր առնել միաբան ուխտին հաւատոց, որ ամենայն ուժովն իւրեանց ընդդէմ կացեալ էին չարութեանն հեթանոսաց: Իսկ անարիս այս լաւ համարէր պահել զուխտըն հեթանոսաց վասն մարմնական խաղաղութեան, քան պատերազմակից լինել ուխտին քրիստոնէութեան»:

Գրեթէ նոյնպէս կը պատմէ և Փարպեցին, բայց առանց Թըշնամանաց ընդդէմ կայսեր և պաշտօնէից նորա, հանդերձ բանաւոր պատճառօք, որոց վասն կայսրը զլացաւ օգնութիւն։ Ահա պատմութիւն Փարպեցւոյն. «Պատգամաւորքն երթեալք յանդիման եղեն թագաւորին Թէոդոսի. որոյ լուեալ զպատճառ նոցա երթիցն՝ սիրով լսէր ի նոցանէ և յանձն առնոյր օգնել նոցա գնդիւ. և մինչդեռ պատրաստէր զիրս խոստմանն՝ հասեալ վախճան սրբոյն վճարէր ի կենցաղոյս։ Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս, որոյ և տեղեկացեալ զպէտս խնդրոյն իրացն Հայոց՝ հարցանէր զաւագս դըրանն, թէ որպիսի՛ թուի ձեզ պատասխանի առնել արանցդ եկելոց յաշխարհէն Հայոց։ Պատասխանի տուեալ Անատոլեայ, որ ի ժամուն սպարապետ էր Անտիոքայ, և Փլորենտի ուրումն առն ասորի ազգաւ որ էր աւագ դրանն թագաւորին՝ ասեն. Մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ և զհաստատութիւն, զոր ի բազում ժամանակաց գրեալ և կնքեալ է առաջին թագաւորացն, գրգռել պատերազմաւ իրս մի խաղաղացեալս, և ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ թագաւորին իւրեանց։ Այլ և զեւս անյայտ իրացդ պարտ է ածել զմտաւ, զոր ոչ ոք կարէ գիտել, թէ ո՛րպէս, գիւրեա՞ւ և կամ սաստիկ սղտորմամբ պատերազմդ եղեալ վճարեսցի։ Եւ զայս այսպէս ասացեալ՝ կասեցուցին զմիտս թագաւորին, և վնասեցաւ ակընկալութիւնն Հայոց որում ուշ եդեալ մնային, և ոչ պատահեցաւ» (Փարպ. ԽԱ.)։

Ըստ Եղիշէի՝ Մարկիանոս ոչ միայն զլացաւ օգնել Հայոց, այլև ղրկելով դեսպան առ Յազկերտ զԵղփարիոս ասորի՝ «եմուտ ընդ նմա յուխտ հաստատութեան, ձեռնթափ լինել ի զօրացն Հայոց (այսինքն հրաժարել յօգնելոյ) զօրու և զինու և ամենայն օգնականութեամբ»։ Եղփարիոս անուամբ ոք առ Մարկիանոսիւ չկայ յիշուած ի պատմութեան, և ոչ իսկ կայ այնպիսի անուամբ ոք. նաև չիք յիշուած թէ Մարկիանոս ղրկեց երբէք դեսպան և մտաւ յուխտ ընդ Յազկերտի վասն Հայոց։ Յետ դաշանցն որ եղան ի մէջ Թէոդոսի Ա. և Պարսից վասն բաժանման աշխարհին Հայոց (384), ո՛չ դաշն և ոչ բանագնացութիւն երբէք եղաւ ի մէջ Յունաց և Պարսից Հայոց համար. այն բաժանմամբ եղաւ մի մասն Հայոց նահանգ Յունաց, և միւսն՝ նահանգ Պարսից. իւրաքանչիւր մասն ունէր զիւր օրինաւոր թագաւոր։ Զայս կը ցուցնեն բանք Անատոլեայ և Փլորենտի առ Փարպեցւոյն, թէ «Մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ և զհաստատութիւն, որ ի բազում ժամանակաց գրեալ և կնքեալ է առաջին թագաւորաց (Յովիանու, Կոստանդեայ, Վաղեսի և Թէոդոսի)... և ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ թա-

զաւորին իւրեանց»։ Ուստի հաստատութեամբ կրնանք ըսել, թէ զաշինք կամ պատգամաւորութիւն բնաւ եղած չէ ո՛չ Մարկիանոսէ առ Յազկերտ, և ոչ Յազկերտէ առ Մարկիանոս։ Պատմութիւնն այն ողջոյն գիւտ է Եղիշէի։ Եւ ըսելն Եղիշէի, թէ Մարկիանոս դեսպան ղրկելով իմացուց Յազկերտի, թէ չկամէր օգնել Հայոց՝ Մարկիանոս առելի ցուցնելու համար է, ինչպէս կ՚ըսէ իսկ, թէ «Անարիս այս լաւ համարէր պահել զուխտն հեթանոսաց քան պատերազմակից լինել ուխտի քրիստոնէութեան»։ Գաթըրճեան վարանելով Եղիշէի այս պատմութեան վրայ՝ զԵղփարիոսն կը համարի զԱրդաբուրիոս ալան, պատրիկ առ Թէոդոսիւ Բ. և առ Մարկիանոսիւ։ Եւ որովհետև, ինչպէս ըսինք, չիք յիշուած ի պատմութեան, թէ Մարկիանոս հակառակ Հայոց դեսպան ղրկեց առ Յազկերտ և յուխտ մտաւ ընդ նմա չօգնել Հայոց՝ Գաթըրճեան այս դժուարութենէ ևս ազատելու համար՝ ի պատիւ Եղիշէի կը գտնէ սա հնարը։ Եղիշէ կը պատմէ, որպէս թէ յետ բաժանման Վասակայ յուխտէն, երկոքին կողմանք, ուխտապահքն և ուրացեալք, մեծամեծ աւերումներ ըրին, շատ քաղաքներ և գեղեր կործանեցան. Վարդանանք գերի բռնուած պարսիկ մը արձակելով իբրև գուժկան ղրկեցին առ Յազկերտ իմացունել նմա, թէ այն ամենայն աւերմանց պատճառ էր Վասակ։ Յազկերտ զարհուրելով և կարծելով, թէ կայսր օգնական էր ապստամբ մասին՝ մեղմացուց խստութիւնը, բայց գաղտ դեսպան ղրկելով առ Մարկիանոս, երբ ստուգեց թէ Յոյնք ձեռնտու չէին Հայոց՝ միւսանգամ խստացուց հալածումը։ Գաթըրճեան այս պատմութիւններն, որ գիւտ են Եղիշէի—(առ Փարպեցւոյն, առ որում շատ պարզ և ճշմարիտ է պատմութիւնն Վարդանանց՝ չկան ամենևին նշմարանք ո՛չ դեսպանի և ոչ բանագնացութեան երկու տէրութեանց մէջ)—համարելով ճշմարիտ՝ կը փոխէ դիպաց կարգն ըստ հաճոյս. կու տայ նախ Յազկերտի ղրկել դեսպան առ Մարկիանոս ստուգելու համար, թէ արդարև օգնակա՞ն էր նա Հայոց, և ապա Մարկիանոսի կու տայ ղրկել դեսպան զասորին Եղփարիոս, կամ, որպէս կամի Գաթըրճեան՝ զԱրդաբուրիոս ալան։ Եղիշէի պատմութիւնը դնելով ճշմարիտ՝ հարկ էր Գաթըրճեանի դիմել այսպիսի հայթայթանաց, տալու համար անստոյգ պատմութեան մը ստուգութեան կերպարան։ Այս պատմական կէտը հարկաւոր համարեցանք լուսաւորել հոս, զարտուղելով մեր պատմութեան կարգէն։ Գանք դարձեալ Եղիշէի նամակին։

Նախ չէր ուղիղ ըսել. «Նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց՝ ապրեալ սնաւ յերկրիդ Յունաց», փո-

խանակ ընելու. «Ցիշելով զառաջին սէրն ձեր՝ զնախնին մեր Տրդատիոս փախուցեալ ապրեցուցին», ա. Հ.։ Տրդատ որ էր յայնժամ կաթնկեր մանուկ ըստ պատմութեան՝ չէր կրնար յիշել Հռոմայեցւոց առաջին սէրը։ Հակառակ է նաև աւանդութեան ազգային պատմչաց Ագաթանգեղոսի և Խորենացւոյն՝ զԱնակ, զսպանողն Խոսրովու կոչել հօրեղբայր Տրդատայ։ Ագաթանգեղոս գիտէ զԱնակ ազգական Խոսրովու. իսկ Խորենացին կը համարի զԱնակ Պահլաւաց Սուրենեան տոհմէն, իսկ զԽոսրով հայր Տրդատայ Կարենեան տոհմէն։ Նամակին հեղինակներն եթէ չէին գիտեր տակաւին զԽորենացին՝ անշուշտ գիտէին զԱգաթանգեղոս։ Եւս աւելի անտեղի էր ըսել, թէ Տրդատ ընկալաւ զհաւատոն եպիսկոպոսապետէն Հռովմայ։ Ո՞ր հայը չէր գիտեր յայնժամ, թէ Տրդատ Լուսաւորչէն ուսաւ քրիստոնէութիւնը, Հռովմայ եպիսկոպոսին հետ չունեցաւ ամենևին գործ։ Ուստի յիրաւի կրնանք ըսել, թէ այն նամակն չէ և չկարէ լինել գործ եպիսկոպոսաց և նախարարաց ժողովի, այլ անուս խաբեբայի մը, եթէ ոչ նորին իսկ Եղիշէի, որոյ պատմութիւնը չէ ազատ բարեպաշտ խաբէութիւններէ։

Անտեղի է նաև ասելն Եղիշէի, թէ «Իբրև ընթերցան զգիր պաղատանաց Հայոց աշխարհին առաջի թագաւորին», ստուգելու համար, թէ կա՞ր արդարև ի վաղուց ուխտ կամ դաշն ի մէջ Հայոց և Հռոմայեցւոց՝ «բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան»։ Դաշնակցութիւնն Հայոց ընդ Հռոմայեցւոց էր հին։ Եւսեբիոս գիտէ զՀայս ի սկզբանէ, ἐξ ἀρχαίου, այսինքն Պոմպէի ժամանակէն, բարեկամ, նիզակակից և դաշնաւոր Հռոմայեցւոց. մանաւանդ թէ մասն էին հռոմէական պետութեան Միջագետաց հետ Հայք, որոց պատճառաւ այնչափ պատերազմներ եղած են Հռոմայեցւոց ընդ Պարսից, թէպէտ ուրիշ դաշամբք երիցս թողան Հայք Պարսից, ինչպէս առ Ցովիանու, առ Կոստանդաւ և առ Վաղեսիւ, մինչև եղաւ առ մեծաւն Թէոդոսիւ (379—395) բաժանումն Հայաստանի, մեծագոյն մասն ինկաւ Պարսից, փոքրագոյն մասը միայն՝ Հռոմայեցւոց։ Այս դաշանց առաջինը, որ եղաւ առ Ցովիանոսիւ և որով թողան Հայք Պարսից՝ կը յիշէ Բուզանդ.—«Իբրև եղև խաղաղութիւն ի մէջ թագաւորին Յունաց և ի մէջ թագաւորին Հայոց Շապհոյ՝ ուխտից նամակ գրեալ և կնքեալ տայր թագաւորն Յունաց թագաւորին Պարսից։ Եւ գրեալ էր յուխտից նամակին այսպէս. Ետու քեզ, ասէ, զՆծբին քաղաք որ է յԱրուեստանի, և զՄիջագետս Ասորոց. և մէջաշխարհին Հայոց ձեռնաթափ եմ, ասէ. թէ կարասցես յաղթել նոցա և արկանել ի ծառայութիւն՝ ես ի թիկունս ոչ եկից նոցա։ Արդ ի նեղ ուրեմն անկեալ թագաւորն Յունաց, և ի նեղին վշտի զայս ձև օրինակի

բանիցն կնքէր մուրհակ և տայր թագաւորին Պարսից, և տպա ճողոպրէր ի նմանէ» (Բուզ. Դ. ԻԱ.)։ Բուզանդ գիտէ նաև վերջին բաժանումն առ մեծաւն Թէոդոսիւ.—«Ապա դեսպանք և հրեշտակք երկուց թագաւորացն, Յունացն և Պարսից, միմեանց առ միմեանս երթևեկէին։ Եւ այնուհետև առնեն խորհուրդ միաբանութեան հաւանութեան ընդ միմեանս թագաւորն Յունաց և թագաւորն Պարսից. և լաւ համարեցան զաշխարհն Հայոց ընդ երկու ի մէջ իւրեանց բաժանել» (Բուզ. Զ. Ա.)։ Ի մեծէն Թէոդոսէ մինչև ի Թէոդոս փոքր անցած էր 13 կամ 14 տարի. ուստի ոչ Թէոդոս և ոչ պաշտօնեայք նորա կարէին անգիտանալ այսօրիկ և ոչ Հայք, որոց գիրն էր նամակ, ինչպէս կ'ըսէ Փարպեցին, կամ գիր պաղատանաց, ըստ Եղիշէի, և ոչ պահանջելոյ նիզակակցութիւն զօրութեամբ դաշանց։ Ապա աւելորդ էր մատեաններ մէջ բերել ստուգելու համար Հայոց դաշնակցութիւնը։ Ուստի անիրաւ է թշնամանելն Եղիշէի զՄարկիանոս իբրև «անարի», և զպաշտօնեայս նորա կոչել «անարգ և վատթար արանց, միանգամայն և անաստուածք»։ Արդարև անհնար էր Մարկիանոսի օգնել Հայոց՝ հակառակ դաշանց, «առանց երկիւղի մեծի և անսպառ պատերազմի», ինչպէս կ'ըսէ Գաթըրճեան, և այս այնպիսի ժամանակ՝ մինչ «արդարև պետութիւնն Հռոմայեցւոց ի մեծի ճգնութեան էր յերեսաց Հոնացն, որ զԱտտեղաւ գումարեալ էին, և ճշգիւ իսկ ի նմին ժամանակի (450 – 451) էր Մարկիանոս ի պատգամաւորութեան ընդ ահագինն Ատտիղայ արքայի նոցա»։

Խորենացին յետ պատմելոյ (Գլ. Ղ.), թէ Արիստակէս դարձաւ ի Նիկիայ «քսան կանոնեալ գլխովք» ժողովոյն, և Գրիգոր «յաւել սուղ ինչ գլուխս յինքենէ»՝ ի վախճանի նոյն գլխոյն կը յաւելու. «Բայց սրբոյն Գրիգորի դարձեալ ի նոյն լերինս՝ ոչ ումեք յետ այնր յաւելոյր երևել մինչև ցվախճան»։ Թէ ինչ լերինք էին՝ յառաջագոյն յիշուած չէ. յաջորդ ՂԱ. գլխէն կ'ուսանինք, թէ Դարանաղեաց գաւառին «Մանեայ այրք» կոչուած լեռներն էին։ Խորենացին կու տայ պատճառը, թէ ընդէր այն լերինք կոչուեցան Մանեայ այրք։ Ըստ Խորենացւոյն՝ որպէս թէ Մանեայ անուն կին մի, Հռիփսիմեանց ընկերներէն, չկրնալով հետևել ընկերներուն՝ մնաց ի լերինս Դարանաղեաց ի քարանձաւս կամ յայրս, որք յանուն նորա կոչուեցան Մանեայ այրք.—«Այլ ասասցուք թէ ՞ր աղագաւ կոչի նա Մանեայ այրք։ Քանզի էր կին ումն Մանեայ անուն յընկերաց սրբոց Հռիփսիմեանցն, որպէս զնունէ Վրաց վարդապետուհի. որ ոչ շուլթափեաց հետևել նոցա ի գնալն առ մեզ, գիտելով զամենայն տեղիս՝ Աստուծոյ, բնակեցաւ ի լերինս յայսմիկ,

այրս ինչ քարանց. վասն որոյ կոչեցաւ անուն լերինն Մանեայ այրք. յոր այր յետոյ բնակեցաւ և սուրբն Գրիգոր»: Բայց ինչպէս ապրեցաւ Գրիգոր այն ամայի լերանց մէջ, և յառաջ քան զնա Մանեայ. թերևս ագռաւներ կ'սպասաւորէին նոցա, որպէս երբեմն Եղիայի:

Գրիգորի, թողլով եպիսկոպոսութիւնը երթալ ճգնելն ի լերինս՝ գիտէ նաև Ագաթանգեղոս, բայց Մանեայ անուն կին Հռիփսիմեանց ընկերներէն՝ չգիտեր ամենևին: Խորենացւոյն «Մանեայ այրքն» առ Ագաթանգեղոսի է «Մանայարք», իբրև անուն անապատի: Ըստ Ագաթանգեղոսի՝ ո՛չ Տրդատ և ոչ այլ ոք գիտէր, թէ Լուսաւորիչ ունէր որդիս: Երբ Գրիգոր թողլով զեպիսկոպոսութիւնն սկսաւ երթալ բնակել անապատ տեղեր՝ թագաւորը կ'աղաչէր զնա բնակել առ իւր. բայց Գրիգոր չառաւ յանձն: Յայնժամ ոմանք ի տեղեկաց իմացուցին Տրդատայ, թէ Գրիգոր ունէր երկու որդի: Իսկոյն Տրդատ մարդ ղրկելով բերել տուաւ զնոսա, և նոքօք հանդերձ ելաւ ի խնդիր Գրիգորի, զոր գտնելով Դարանաղեաց գաւառին Մանայարք կոչուած տեղը՝ տուաւ նմա ձեռնադրել կրտսեր որդին Արիստակէս փոխանորդ իւր: Ահա Ագաթանգեղոսի պատմութիւնն. «Առեալ Գրիգորի զոմանս յաշակերտացն յիւրաքանչիւր մենաստանաց՝ երթեալ լեռնակեաց, մենակեաց, սորամուտ, ծակախիթ եղեալ, զառօրէականն խոտաբուտ ճարակօքն վճարել:... Իսկ թագաւորն շատ աղաչեաց զԳրիգորն վասն հանապազորդ ընդ նմա կալոյ, զի ընդ ինքեան շրջեցուսցէ. որում ոչ հաւանեալ չառնոյր յանձն, այլ յանապատ տեղիս հաճեալ էր բնակել:... Իսկ իբրև կարի կարօտեալ թագաւորն աշխարհաւն հանդերձ զնմանէ, զի ի մէջ նոցա բնակեսցէ՝ յայնմ ժամանակի լուան յոմանց ի տեղեկաց, որ գիտակ արարին զթագաւորն վասն սրբոյն Գրիգորի, զի յառաջ ի մանկութեան տիսն էր ամուսնացեալ և երկու որդիս ստացեալ, որոց առաջնոյն Վրթանէս... և երկրորդին՝ Ռստակէս...: Իբրև լուաւ զայս ամենայն Տրդատ՝ վաղվաղակի առաքէր երիս աւագս փառաւորս պատուականս հրովարտակօք հանդերձ, զի զերկոսս որդիսն Գրիգորի վաղ առ նա հասուսցեն: Իբրև եկին հասին նոքա յերկիրն Հայոց... թագաւորն նոքօք հանդերձ ի խնդիր ելանէր սրբոյն Գրիգորի... ապա եկեալ գտանէր զնա ի Դարանաղեաց գաւառին, ի լերինն որ կոչի Մանայարք, յանապատին: Ապա աղաչեաց թագաւորն Տրդատ զսուրբն Գրիգորիոս, զի փոխանակ այնր զի ոչ հաւանեցաւ նա գալ և շրջել ընդ նմա և սիրեաց զմենաւորութեան կեանս՝ ձեռնադրեսցէ տացէ նմա եպիսկոպոս զորդին իւր զՌստակէս, զոր ձեռնադրեաց յեպիսկոպոսութիւն փոխանակ իւր»: Բայց

տակաւին, ըստ Ագաթանգեղոսի, Գրիգոր կը շրջէր հանդերձ Ռըստակէսիւ ուսուցանել բանիւ և գրով մինչև ի վախճան իւր.—«Իսկ մեծ արքեպիսկոպոսն Գրիգոր սուրբ որդւովն իւրով Ռստակէսաւն և ամենայն երևելի օգնականօքն զամենայն աշակերտելովքն շրջէր և հաստատէր զնոսա կալ ի սպատուիրանին ճշմարտութեան»:

Ա՛յլ է պատմութիւն Խորենացւոյն և աւելի բանաւոր. այսինքըն թէ Գրիգոր «սիրեցեալ զլերինս և զամայութիւն և զհանդարտութեամբ մտաց լինքեան կեալ, որպէս զի խօսեսցի ընդ Աստուծոյ անզբաղապէս, փոխանորդ իւր թողլով զորդի իւր զՌստակէս՝ ինքն եկաց ի գաւառին Դարանաղեաց ի լերինն Մանեայ այրս... սակայն— կը յաւելու—ընդ ժամանակս ժամանակս յայտնեալ շրջէր ընդ աշխարհս, հաստատէր ի հաւատս զաշակերտեալսն: Բայց յետ երևեցաւ յայտնեալ ումեք... այլ ի Մանեայ այրն կեցեալ աներևութաբար ամս բազումս՝ փոխի մահուամբ ի կարգս հրեշտակաց. և հովուաց գտեալ զնա վախճանեալ՝ ի նմին տեղւոջ թաղեցին, ոչ գիտելով թէ ո՛ ոք նա իցէ: Վայելէր իսկ նոցա, որք Փրկչին մերոյ ծննդեանն եղեն խորհրդածուք՝ լինել և աշակերտի նորա յղարկմանն սպասաւորք: Եւ ծածկեալ ամս բազումս աստուածային իմն գոգցես տեսչութեամբ, իբրև զՄովսէսն զայն ի հնումն, զի մի ի պաշտօն առցի ի դեռահաւատ բարբարոսացն ազգաց: Իսկ յորժամ սերտեալ հիմնեցան հաւատք կողմանցս այսոցիկ՝ զկնի յետ բազում ժամանակաց յայտնեցան ճգնաւորի ումեմն Գառնիկ անուն կոչեցելոյ, և բերեալ եդան ի գեւղն Թորդան նշխարք սրբոյն Գրիգորի»:

Բուզանդ, որ կ՚առնու ինչ ինչ յաւանդութեանց զԳրիգորէ՝ կը թուի ակնարկել զընակել նորա յանձաւս, սակայն չգիտեր Մանեայ այրք կամ Մանայարք, այլ կու տայ տեղւոյն Ոսկիք անուն, և կը դնէ զայն ո՛չ ի Դարանաղեաց գաւառին, այլ յանապատի ուրեք մօտ յակունսն Արածանւոյ.—«Գինդս այս ունէր վիճակ բնակութեան զանապատն, ուստի բղխեալ հոսեն ակունք Եփրատայ գետոյն. անդ բնակեալ ընդ ծագս վիմացն ուր յառաջու կայանքն էին մեծին Գրիգորի առաջնոյ»: Բուզանդ, որ աւելի հին է, ուստի և աւելի ազատ հետզհետէ տարածուած վկայաբանութեանց ազդեցութենէն, յետ պատմելոյ համառօտիւ զդարձն Տրդատայ ի ձեռն Գրիգորի (Բուզ. Գ. Բ.)՝ կը յաւելու. «Որոյ (Գրիգորի) ընդ նմին կրսեր որդին Արիստակէս հօրն էր գործակից եպիսկոպոսակից յամենայն ընթացս վարդապետութեանն զամենայն աւուրս կենաց իւրոց մինչև յօրն քրիստոսակոչ հանգստեանն իւրոյ»: Այս պատմութեան ոճէն դիւրին է տեսնել, թէ Բուզանդ զԳրիգոր և զոր-

գիս նորա ի սկզբանէ և միշտ գիտէ ի միասին։ Չիք ի բանս անդ Բուզանդայ ամենևին ակնարկութիւն, թէ որդիքն Գրիգորի մնացած էին անծանօթ ի Կապադովկիա, և յետոյ ուրեմն յանկարծ ի տեղեկաց ծանուցան և կոչուեցան ի Հայս։ Չէ անհաւանական թէ Գրիգոր, ըստ ոգւոյ ժամանակին, համարելով մեծագոյն սրբութիւն լինել լեռնակեաց, մենակեաց՝ կ'առանձնանար երբեմն երբեմն ի մենաստան ուրեք. բայց թէ թողուց ի սպառ իւր հօտը և մեռաւ յանծանօթս, մինչև թաղել ի հովուաց յանդէտս և ապա յայտնել մարմնոյ նորա տեսլեամբ՝ զայս չեն գիտեր ոչ Ագաթանգեղոս և ոչ Բուզանդ. մանաւանդ թէ Բուզանդ անգէն իսկ առ կենդանութեամբ Գրիգորի գիտէ զԹորդան կալուած Գրիգորի, ուր կը բնակէր նա, ուր և թաղուեցաւ.—«Իսկ սոցա (Գրիգորի և որդւոյն) տեղիք բնակութեան և շիրիմք հանգստեան—մեծին Գրիգորի՝ ի Դարանաղեաց գաւառին, ի գեւղն որ անուանեալ կոչի Թորդան, և Արիստակեայ որդւոյ նորա՝ յԵկեղեաց գաւառին, ի Թիլն աւանի, ի կալուածս Գրիգորի հօր իւրոյ»։ Ի գլուխն ԺԴ. յայտնապէս կ'ըսէ, թէ ինչպէս Յովհաննու և Առաքելոց մասուններն ի Տարօն՝ նոյնպէս եկեղեցին Թորդանու «վասն գերեզմանացն Հայրապետին Գրիգորի՝ կանոնաւ—այսինքն սովորութեամբ, ի վաղուց—ի Հայրապետացն և ի թագաւորացն պատուեալք լինէին»։ Ապա Բուզանդ չգիտեր ամենևին, թէ նշխարք Գրիգորի թաղեցան ի հովուաց յանծանօթս, մնացին «ծածկեալ ամս բազումս... և յետ բազում ժամանակաց յայտնեցան» տեսլեամբ, «և բերեալ եդան ի գիւղն Թորդան»։

Խորենացւոյն ԴԱ. գլխոյն վերջին մասն ունի Գրիգորի համառօտ ազգաբանութիւնը։ «Սա, կ'ըսէ, որպէս ամենեցուն յայտնի է (իմա ի գրուցաց), աշխարհաւ Պարթև, գաւառաւ Պահլաւ, յազգէ թագաւորեալ, զատուցեալ Արշակունի, ի ցեղէ Սուրենեան, ի հօրէ Անակ կոչեցելոյ (Բուզանդ ևս գիտէ զԳրիգոր որդի Անակայ.—Բուզ. Գ. Բ.), յարևելից կողմանց աշխարհիս մերոյ արևելք ծագեալ մեզ և իմանալի արեգական հոգևոր ճառագայթ, ի խորին չարութենէ կռապաշտութեան ելք, ճշմարիտ բարի և այսահալած, երանութեան և շինութեան հոգևոր առիթ»։ Արդարև Գրիգոր արժանի է ևս մեծամեծ գովեստներու. սակայն պարտ է խոստովանել անաչառութեամբ—թէպէտ չթուի բազմաց հաճոյ—թէ արդի քննադատութիւնն չկարէ ընդունել Գրիգորի այս ազգաբանութիւնն, այսինքն թէ էր նա որդի Անակայ ուրումն Պարթևի, որ հրապուրեալ յԱրտաշրէ կու գայ ի Հայս ընտանեօք իբրև ազգական Խոսրովու, կ'սպաննէ զնա յորսի և ինքն ևս կ'սպանուի հանդերձ ընտանեօք. կ'ազատի միայն մանուկ մի ստնդեայ, այն է Գրիգոր, զոր փախըս-

տեամբ կ'ապրեցուննեն ի կողմանս Ցունաց. Նոյնպէս յընտանեաց Խոսրովաւ կը փախցուննեն զՏրդատ մանուկ կաթնկեր ի դուռն կայսեր։ Մանկան մը ազատելն ի կոտորածէ յաճախ է ի պատմութեան Խորենացւոյն։ Այսպէս Արտաշէս Բ. տղայ կ'ազատի կոտորածէ. կոտորածէ կ'ազատի իբրև տղայ նաև Պերոզամատ, նախնին Կամսարականաց։ Եթէ չենք սխալիր՝ երևելի մարդիկ այսպէս ի տղայութեան ազատած դնել կոտորածէ՝ նմանութիւն է Քրիստոսի ազատութեանն Բեթղեհեմի մանկանց կոտորածէն։ Հեղինակ Անակայ պատմութեանն, որուն ամբողջ գլուխ մի (ՀԳ.) նուիրած է Խորենացին՝ է, ինչպէս ինքն ևս կը խոստովանի՝ Ագաթանգեղոս.—«Ցետ մահուն Արտաւանայ սկսանէր Խոսրով թագաւորն Հայոց... արշաւել ի կողմանս Ասորեստանի, մինչև ի դրունս Տիզբոնի, աւար առեալ զերկիրն ամենայն՝ յապականութիւն դարձուցանէր զշինանիստ քաղաքացն և աւանացն ցանկալեաց, զշէն երկիրն ամենայն թափուր և աւերակ թողոյր. ջնջել, ի միջոյ ի բաց կորուսանել, խլել քակել, հիմն ի վեր ջանայր առնել, համարէր բառնալ զօրէնս տէրութեանն Պարսից։... Ամս տասն ստէպ ստէպ զայս օրինակ աւար առեալ աւերէին զամենայն երկիր սահմանացն որ ընդ Պարսից թագաւորութեամբ և իշխանութեամբ։...

«Իբրև զայն ամենայն չարիս ետես թագաւորն Պարսից... ի խորհուրդ կոչէր զամենայն նախարարս իւրոյ տէրութեանն... աղաչէր զամենեսեան հնարս ինչ մարթել գտանել... թերևս ոք զվրէժուց հատուցումն խնդրել մարթասցէ. յերկրորդական գահ իւրոյ տէրութեանն մատուցանել խոստանայր, բայց միայն, ասէ, աթոռովս ես ի վեր եղէց քան զնա։.. Արդ ոմն ի միջոյ խորհրդեանն, գլխաւոր նահապետ Պարթևաց, որոյ անուն Անակ էր, յոտն կացեալ ի մէջ անցեալ՝ յիւրմէ ազգէն իբրև ի թշնամւոյ խոստանայր վրէժ խնդրել։ Խօսել սկսաւ ընդ նմա թագաւորն և ասէ. Եթէ միայն զայդ նախանձ խնդրեսցես միամտութեամբ՝ զբնակութիւնն պարթևական զձեր սեպհական Պահլաւն ի ձեզ դարձուցից, և քեզ թագ եդեալ փառաւորեցից... և երկրորդ ինձ կոչեցից։ Պատասխանի ետ Պարթևն և ասէ. Զմնացորդս ազգի իմոյ կեցուսցես դու, այլ ես և եղբայր իմ հարազատ այսօր հրաժարեսցուք ի քէն։ Յայնմ ժամանակի հանդերձեցաւ կազմեցաւ Պարթևն եղբարբն իւրով, հանդերձ ընտանեօք, կանամբք և որդւովք և ամենայն աղխիւ իւրեանց։... Եկեալ յանդիման եղև Խոսրովու յՈւտի գաւառի, ի Խաղխաղ քաղաքի, ի ձմերոցս արքայութեանն Հայոց։... Իբրև ետես թագաւորն զայլն, զի դիմեալ եկեալ էր առ նա ամենայն ընտանեօք հանդերձ՝ միամտութեամբ հաւատաց ի նա... և հանէր նստու-

ցանէր զնա յերկրորդ աթոռ թագաւորութեանն։... Իբրև եկին հասին աւուրք ջերոտ... գումարտակ առնէր թագաւորն (Խոսրով) անդրէն արշաւել ի կողմանս Պարսից։ Իբրև զայն լսէր Պարթևն՝ զերդումն ուխտին յիշէր որ ընդ Պարսից արքային ուխտեալ էր. նա և բըդ֊խոստմունսն յիշէր զպարգևացն, և ի բուն աշխարհն փափաքէր որ Պահլաւն կոչէր, և վատ խորհուրդ ի միտ արկանէր. առնոյր զթա֊գաւորն մեկուսի նա և եղբայր իւր հարազատ իբրու ի պատճառս ինչ զբօսանաց, իբրու խորհուրդ ինչ խորհելոյ ընդ նմա. և զսու֊սերսն պողովատիկս թերաքամեալս ունէին. յանկարծ յեղակարծումն ժամանակի զէնս վերացուցեալ զթագաւորն դիաթաւալ կացուցեալ յերկիր կործանէին։ Անդուստ ուրեմն իրազգած եղեն իրացն որ ե֊ղեն. գոյժ աղաղակի ամբոխին թանձրանայր։ Մինչ այս մինչ այն՝ նոքա հեծեալ յիւրաքանչիւր երիվարս փախստական լինէին։ Իբրև զայն գիտացին նախարարք հայակոյտ զօրացն՝ գունդ գունդ հատա֊նէին, զկնի լինէին. ոմանք ընդ ցամաքն աճապարեալ հասանել ի խելս կամրջացն առ դրունս Արտաշատ քաղաքի։ Զի գետն Երասխ յարուցեալ գայր դարիւ և դարիւ... Կէսք անցեալ ընդ կամուրջն Վաղարշապատ քաղաքի զոր և կամուրջ Մեծամօրի կոչեն՝ աճա֊պարէին հասանել յառաջ մի ի խելս կամրջին Արտաշատու։ Ի կիրճս ճանապարհացն արգելին զնոսա. ի մէջ արարեալ զնոսա ի Տափե֊րական կամրջացն գետավէժ առնէին զնոսա։ Եւ ինքեանք անդրէն դարձեալ վայիւք, ճչովք և ողբովք, և ամենայն երկիրն ժողովեալ զթագաւորն աշխարէին։ Եւ մինչդեռ ջերմ ոգիքն ի ծոցոյն չև էին թափեալ և շունչ վախճանին չև էր հասեալ՝ հրաման տայր զազ֊գատոհմն (Անակայ) սատակել։ Ցայնժամ սկսան սատակել և կոտո֊րել. և ոչ թողին յերիտասարդաց մինչև յայն որ բնաւ զաջ և զձախ ոչ գիտէր. նաև զիգական տոհմն մաշէին ի սուր սուսերի իւրեանց։ Բայց միայն երկու մանկունս յորդւոցն Պարթևին պրծեալ ոմն ապրեցուցանէր ի ձեռն դայեկաց ուրումն, և ի կողմանս Յու֊նաց առեալ փախչէին։... Իբրև լուաւ զայս թագաւորն Պարսից... զօրաժողով լինէր, խաղայր գնայր, ասպատակ սփռէր զկողմամբք Հայաստան աշխարհին. զխօսուն և զանասուն, զծեր և զտղայ, զե֊րիտասարդ և զմանուկ առ հասարակ խաղացուցանէր ի գերու֊թիւն։ Անդ ոմն պրծեալ ապրեցուցանէր ի հինէ անտի յորդւոցն Խոսրովու թագաւորին Հայոց մանկիկ մի փոքրիկ անուն Տրդատ. առեալ դայեկացն փախուցին ի դուռն կայսեր, ի կողմանս Յունաց։.. Երթեալ սնեալ և ուսեալ Տրդատէս առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն կոչեցեալ։ Իսկ որդի Պարթևին, որ ի կողմանս Յունաց գաղ֊թեաց՝ սնանէր և ուսանէր ի Կեսարիա Կապադովկացւոց քաղաքին.

*և մերձաւորեալ զնա սնոյց դայեակն երկիւղիւն Քրիստոսի. և ուսեալ ևս զքրիստոնէական դպրութեան հանգամանս, ընտանի եղեալ գրոց Աստուծոյ և մերձեալ յերկիւղ Տեառն, որոյ անուն ճանաչէր Գրիգորիոս։ Իբրև տեղեկացաւ ի դայեկէն իւրմէ հայրենի գործոցն որ եղեալ էին՝ ել և գնաց առ Տրդատիոս ըստ հեշտ պաշտաման։ Եւ թագուցանէր զանձն, և զայն ինչ ի վեր ոչ հանէր, թէ ո՛յր, կամ ուստի՛, կամ ո՛րպէս կամ զիա՛րդ. զանձն ի ծառայութիւն տուեալ ի հնազանդութեան պաշտէր առաջի նորա» (Ագաթ. Բ, Գ.)։*

*Ըսինք թէ արդի քննադատութիւնն չկրնար իբրև վաւերական ընդունել այս պատմութիւնն, և այս վասն այլևայլ պատճառաց։ Նախ՝ ըստ ժամանակագրութեան Խորենացւոյն՝ Խոսրովայ սպանումն ի ձեռն Անակայ եղած է ի կայսրութեան Վաղերիանոսի (Խոր. Բ. ՀԶ.), այն է յետ 252-ին, մինչ ըստ ժամանակակից պատմութեան Արտաշիր մեռած էր 240-ին, աւելի քան 12 ամօք յառաջ քան զՎաղերիանոս։ Երկրորդ՝ Արտաշիր ամենևին չմտաւ ի Հայս, ուր կը թագաւորէր ըստ արտաքին ժամանակակից պատմութեան Տրդատ Բ, (ըստ Հայոց՝ Խոսրով հայր Տրդատայ մեծի) անընդհատ. և յաջորդն Արտաշրի Շապուհ սկսաւ գրաւել Հռոմայեցւոց երկիրներէն յարևելս, յետ ունելոյ զՎաղերիանոս գերի (260), մինչ թագաւորէր ի Հայս Արտաւազդ ոմն, բարեկամ Շապհոյ, մինչև համարձակել տալ նմա խրատ արձակել զծերունին Վաղերիանոս։ Յետ Արտաւազդայ, իբր 287-ին, համաձայն հաշուոյ Խորենացւոյն (Բ. ՁԲ.)՝ կը թագաւորէ Տրդատ Գ. մեծն, ըստ Հայոց՝ որդի Խոսրովու, այն է Տրդատայ Բ, առ որով (297) եղաւ պատերազմն Դիոկղետիանոսի, որ ի ձեռն Գաղերեայ առաւ ի Պարսից Հռոմայեցւոց երկիրներն յարևելս, ընդ որս և զՀայաստան, և Տրդատ հաստատուեցաւ մասնաւոր դաշամբ (Խոր. Բ. ՁԲ.) իբրև թագաւոր Հայոց, նիզակակից և դաշնաւոր Հռոմայեցւոց։ Այսպէս սպանման հայ թագաւորի դաւով յԱրտաշրէ և իբր 50-ամեայ անիշխանութեան ի Հայս՝ չիք և ոչ նշմարանք յարտաքին ժամանակակից պատմութեան։ Երրորդ՝ ոչ սակաւ կասկած կու տայ նաև Անակ բառին ստուգաբանութիւնը, որ կը նշանակէ յունարէն՝ բանաւոր կամ սպանող, և կը թուի լինել մեր անագ բառն, հրահալելի կտկուղ, որ ի հնումն համարուած էր սպանող (Բանասէր ոմն)։*

*Քաջ վկայաբանն պատմութեան դարձին Հայոց, որպէս զի միացունէ թագաւորութիւնն ու քահանայութիւնը՝ կը մուծանէ զԱնակ Պահլաւ ցեղէն, որմէ էին Արշակունի թագաւորք Հայոց։ Ոչինչ ընդհատ ճարտարութեամբ հիւսուած են կապադովկացւոյն Գրիգորի պատմութեան հանգամանք։ Սոփիա (իմաստութիւն) անուն*

կապադովկացի կին մը ըստ դիպաց իմն հանդիպելով ծննդեան Լուսաւորչին՝ իբրև դայեակ կը սնուցանէ զնա քրիստոնէաբար ի Կապադովկիա. ի հասանել մանկանն ի չափ՝ կ'երթայ մտանել ի ծառայութիւն Տրդատայ, որդւոյ սպանելոյն ի հօրէն իւրմէ, և ապա ի դառնալ այս վերջնոյն ի Հայս՝ լինի պատճառ դարձին նորա ի քրիստոնէութիւն, այլովքն հանդերձ. պատմութիւն մը՝ որ բոլոր պարագաներովն է զրոյց։

Խորենացւոյն ՂԲ. գլուխն, որ է վերջին գլուխ Բ. դպրութեան՝ ունի, հանդերձ համառօտ գովեստիւ զՏրդատայ՝ նորա մահուան պատմութիւնն, որ է արդարև զարմանալի։ Ըստ Խորենացւոյն՝ որպէս թէ Տրդատ տեսնելով նախարարաց կամակորութիւնը՝ կը թողու թագաւորութիւնը, կ'երթայ ճգնել՝ ուր ճգնած էր Գրիգոր։ Նախարարք կը կոչեն զնա, և երբ չանսար նա՝ կու տան նմա դեղ մահու. — «Սա, կ'ըսէ, յետ հաւատոյն որ ի Քրիստոս, ամենայն առաքինութեամբք բացափայլեալ, ևս քան զևս յաճախէր որ ինչ յաղագս Քրիստոսի գործ և բան. սաստելով և հաւանեցուցանելով զմեծամեծ նախարարսն, միանգամայն և զամենայն բազմութիւն ռամկին՝ լինել արդարև Քրիստոսի. որպէս զի վկայեսցեն հաւատոցն՝ ամենեցուն և գործքն։ Այլ զխստասրտութիւն կամիմ ասել, թէ և զամբարհաւաճութիւն ազգիս մերոյ յիսկզբանցն և այսր. որպէս անհամբոյր բարուց և ճշմարտութեան անհարազատ, կամ թէ բնութիւն ունելով զբարձրայօնութիւն և զկամակորութիւն՝ ընդդիմանան կամաց թագաւորին յաղագս կրօնիցն քրիստոսականաց, զհետ երթալով կամաց կանանց և հարճից։ Որում ոչ կարացեալ ներել թագաւորին, ընկեցեալ զերկրաւոր պսակս՝ զհետ ընթանայր երկնաւորին, արագ հասանելով ի տեղի սուրբ ճգնաւորին Քրիստոսի, ծակամուտ լեռնակեցիկ եղեալ։ Աստանօր ամաչեմ ասել զճշմարտութիւնն, մանաւանդ թէ զանօրէնութիւն և զամբարշտութիւն ազգիս մերոյ և զմեծի ողբոց և արտասուաց արժանի սոցա գործս։ Քանզի զհետ առաքեալ կոչեն զնա՝ լինել ըստ կամաց նորա, և ունել զթագաւորութիւնն։ Իսկ ի չհաւանել սորոյն՝ տան նմա արբումն, որպէս անդ ուրեմն ի հինսն Աթենացիքն Սոկրատայ զմոլեխինդն, և կամ թէ զմերն իսկ ասել՝ կատաղեալ Եբրայեցիքն ըմպելի լեղեաւ խառնեալ Աստուծոյ մերոյ։ Եւ զայս արարեալ չէջուցին յինքեանց զբազմափայլ ճառագայթն աստուածպաշտութեան»։ Չենք գիտեր ինչ հաւատ կրնայ ընծայուիլ Խորենացւոյն այս պատմութեան, որոյ նշմարանք անգամ չկան ոչ առ Բուզանդայ և ոչ առ Ագաթանգեղոսի։ Խորենացին այս պատմութեան վրայ կարդալով դառն ողբ ազգին՝ կը կնքէ իւր Բ. դպրութիւնն այսպէս. «Այլ

աստանօր դադարեսցէ բանս, որպէս աշխատութիւն կրեալ՝ յականջս լինել խօսեցեալ մեռելոց։ Այլ պատմութիւնս յաղագս սրբոյն Տրդատայ ճշմարիտ է. քանզի արբուցեալ նմա դեղ մահու՝ զրկեցան ի լուսոյ շնորհաց ճառագայթից նորա, որ թագաւորեաց ամս յիսուն և վեց»։

Խորենացին տալով թագաւորութեանն Տրդատայ 56 տարի, այն է ըստ իւր հաշուին 287-էն մինչև 343՝ կը խախտէ թագաւորաց տարիներն։ Եթէ ըստ Խորենացւոյն տանք 56 տարի թագաւորութեանն Տրդատայ՝ մահ նորա կը հանդիպի 343-ին. և որովհետև Արշակայ թագաւորութեան տարին յայտնի է, այն է 350, այսինքն Մծբնայ վերջին պաշարման տարին ի Շապհոյ, ընդ որում գործակից էր յայնժամ Արշակ՝ Տրդատայ մահուանէն (եթէ դնենք զայն ըստ Խորենացւոյն 343-ին) մինչև ի թագաւորութիւնն Արշակայ կը մնայ 7 տարի, ուստի և դժուարին լինի զետեղել Խոսրովու Կոտակայ և Տիրանայ թագաւորութիւնն այս 7 տարուան մէջ, մանաւանդ որ ի սկզբան թագաւորութեանն թէ Խոսրովու թէ Տիրանայ անցած են իբր 3 ամք պարապ։ Ապա հաւանական տարի մահուանն Տրդատայ է 337, որ կը հանդիպի մահուան Կոստանդիանոսի և վախճանին 40-ամեայ խաղաղութեան. և արդարև, իսկ և իսկ յետ 337-ին կ'սկսին սպառնալիք ի կողմանէ Շապհոյ, և մեծամեծ յուզմունք ի Հայս, մինչև հարկ լինել, ըստ Խորենացւոյն, հռոմէական միջամտութեան զինուք՝ թագաւորեցուցանել զԽոսրով զորդին Տրդատայ։

Ի յառաջաբանի ՂԲ. գլխոյն Խորենացին, յետ դնելոյ զՏրդատ հաւասար Գրիգորի, իբրև գործակից և ճգնող՝ նուաճելոյ կողմանէ հաւանութեամբ կամ սաստիւ՝ առաւելութիւնը կու տայ թագաւորին. —«Զսրբոյ և զմեծէ և զերկրորդ նահատակէ և զմերոյ լուսաւորութեանցն լուսաւոր վերակացուէ ճառելով, զ'ի Քրիստոսէ հանուրց եղելոցս ճշմարիտ թագաւորէ՝ հրաշափառագունիւ պարտ էր անցանել բանիւ, որպէս զգործակցէ և զհաւասար ճգնողէ մերոյ նախաշաւղի և լուսաւորութեանց նահապետի։... Այլ զառաւելութիւն ասեմ աստ զթագաւորին. քանզի խորհելն յաղագս Աստուծոյ՝ զոյգ երկոցունց, իսկ նուաճել հաւանեցուցանողականաւ կամ բռնաւորականաւ բանիւ՝ առաւել էր թագաւորին շնորհ»։

Այս համառօտ տողք Խորենացւոյն զվաստակոց Տրդատայ ի գործ դարձին Հայոց՝ տասնապատիկ աւելի կ'արժեն քան Ագաթանգեղոսի երկայն պատմութիւնն զնիւթական գործակցութենէն Տրդատայ, լի անտեղի պարագաներով։ Ըստ Ագաթանգեղոսի՝ յետ ելից ի վիրապէն՝ Գրիգորի առաջին գործն եղաւ ամփոփել Հռիփսիմեանց

մարմիններն, որ որպէս թէ անթաղ մնացած էին ի հնձանին։ Գրի-գոր խորհուրդ կու տայ Տրդատայ, որ խոզի կերպարանօք—«ի կեր-պարանս աղբեւայոյզ խոզաց»—պատատեալ կը կենար բազմութեան մէջ՝ շինել Հռիփսիմեանց համար վկայարաններ։ Ժողովուրդը կը բերէ անուշահոտ իւղեր, խունկեր, պէսպէս կերպասներ և ուրիշ պատուական նիւթեր. իսկ Տրդատ, որոյ ձեռք և ոտք միայն բժըշկ-ուած էին՝ կ'առնու բահ և բրիչ, փորել հանգստարանաց տեղերն. մինչ Աշխէն տիկին և Խոսրովիդուխտ կը կրեն հողն իւրեանց հան-դերձներով, որպէս թէ պակաս էին գործաւորք։ Յետոյ կը շինուի նաև կաթողիկէն, որ ցուցուած էր Գրիգորի ի տեսլեան։

Յետ շինութեան վկայարանացն և կաթողիկէին՝ կ'սկսի Գրիգոր Տրդատաւ հանդերձ շրջել գաւառ գաւառ, կործանել ո՛չ միայն կռոց արձաններ, այլև մեծամեծ մեհեաններ, և այն՝ սքանչելեօք։ Այս-պէս կը քանդէն մեհեանք յԱրտաշատ, ի Թորդան, յԱնի, յԵկեղեաց, ի Դերջան, և յետ դարձին Գրիգորի կաթողիկոսութեամբ՝ Վահե-վահեան մեհեանն ի Տարօն, ոչ առանց մեծամեծ նշանաց։ Այսպէս ի կործանելն Տիւր դից մեհեանը մօտ յԱրտաշատ՝ բազմութիւնք դիւաց իբրև զօրաց գունդեր կը կռուին ճակատ առ ճակատ.— «Երևեալ դիւացն ի նմանութիւն առնևձիոյ բազմութեան և կազ-մութեան գնդի, և հետակազօր մկնդաւորք և սունաւորք առաջի ընթացեալք ի կերպարանս մարդկան նմանութեան, նիզակօք և նշանօք, ի զէն և ի զարդ վառեալք, մեծաւ գոչելով զաղաղակ հարեալք՝ փախստեալք յԱնահտական ի մեհեանն անկանէին, ուստի ընդ հասեալսն կռուէին. նետս անոյժս և քարավէժս թանձրա-թափ ի վերուստ ի շինուածոցն ի խոնարհ զմարդկաւն ցնդէին, սակաւ մի զարհուրեցուցեալ զնորահաւատս մարդկանն։ Իսկ սուրբն Գրիգոր իբրև տեսանէր զայն՝ նշան տէրունական առնէր. և դի-մեալ ի դուռն մեհենին՝ ամենայն շինուածք մեհենին ի հիմանց գլորդեալ տապալեցան, և լուցեալ յանկարծօրէն փայտակերտն հըր-դեհեցաւ ի տէրունական խաչէն զօրութենէ, և ծուխն ծառացեալ մինչև յամպս հասանէր։ Եւ ամենայն դևքն ի փախուստ դարձեալ առաջի մարդկանն երևեցան, զօձիս արկեալ և զճակատ հարեալ և զճիչ բարձեալ մեծաձայն գոչելով ասէին, թէ Վա՜յ մեզ, զի յամե-նայն երկրէ փախստական արար զմեզ Յիսուս որդին Մարիամու դստերն մարդկան. և աստի ևս ի ձեռն մեռելոց և ի ձեռն կա-պելոց եհաս մեզ փախստական լինել։ Արդ ի յո՛ դիմեալ փախիցուք, զի փառքն նորա լցին զտիեզերս։ Այլ երթամք մեք ի բնակիչս լե-րինն Կաւկաս ի կողմանս հիւսիսոյ, թերևս հնար լիցի և ապրեալք լիցուք. զի առանց հանգստեան զօդս կոծեալ, անջատ զմեզ ի բնա-

*կուլթենէ մարգկան, կատարել զցանկութիւն կամաց մերոց նոքօք։ Եւ զայս ասացեալ առաջի ամենեցուն. զի մարդիկն որ լուան՝ առաւել ևս ի հաւատս հաստատեցան ամենեքին։ Իսկ սևագունդ դիւացն աներևոյթ եղեալ՝ չքատեալ ի տեղւոյն իբրև զծուխ պակասեցան։ Իսկ մարդկան հասելոցն անդէն քանդեալ զհիմունս մնացեալս ևերէին, և զգանձս մթերեալս՝ աղքատաց, տառապելոց և չքաւորաց մասն հանէին։ Եւ զգաստակերտն և զսպասաւորսն քըրմովքն հանդերձ և նոցին գետնովքն և սահմանօք ի ծառայութիւն նուիրեցին եկեղեցւոյ սպասաւորութեան» (Ագ. ԾԲ.)։*

*Նոյն նշանք կը կրկնուին ի կործանման մեհենին Բարշամինեայ ի Թորդան—«կերպակերպ նմանութեամբք դիւացն փախստական լինելով անկանէին ի կողմանս Խաղտեաց»։ Դարձեալ ի կործանման Անահտական մեհենին յԵրէզն ի գաւառին Եկեղեաց՝ «ի նմանութիւն վահանաւոր զօրու ժողովեալ դիւացն մարտնչէին, և մեծագոչ բարբառով զլերինսն հնչեցուցանէին. փախստական լինէին, և ընդ փախչելն նոցա կործանեալ բարձրաբերձ պարիսպքն հարթեցան»։ Աւելի զարմանալին կը պատմէ ստուգապատումն Ագաթանգեղոս ի կործանման Վահեվահեան մեհենին Տարօնոյ։ Դեւք կը ծածկեն մեհենին դուռը. բայց հողմ սաստիկ փչելով խաչանիշ փայտէն, զոր ունէր Գրիգոր ի ձեռին՝ ոչ միայն կը տապալէ ահագին շինուածն, այլև բոլոր նիւթ աւերակին—քար, փայտ, ոսկի, արծաթ, նաև սպանուած քուրմերուն ոսկրոտին, անհետ լինին, այնպէս որ նշմարանք անգամ չտեսնուիր.—«Իբրև գայր ի կողմանց Յունաց՝ բարձեալ բերէր նշխարս ինչ յոսկերացն մեծի մարգարէին երանեալ Մկրտչին Յովհաննու, և զսուրբ վկայն Քրիստոսի զԱթանագինէսն։ Իբրև եկին հասին յանդիման մեհենացն մօտ ի գետն Եփրատ՝ կամէր հանել զնոսա ի բարձրաւանդակ տեղիս մեհենիցն, կործանել զբագինսն և շինել զվկայարանս նոցա։... Հրաման ետ Գրիգոր զօրականին և իշխանացն որ ընդ իւրն էին, զի ելցեն մըրծօք տապալեսցեն զշինուածս բագնացն։ Ելեալ շատ ջանացան և ոչ կարացին զդուրս բագնացն գտանել՝ զի ի ներքս մտցեն, զի ծածկեցին դեւքն ի նոցանէ. և ի կողմանցն արտաքուստ ջանացան, և ոչ գծեաց երկաթ գործւոյն։... Իսկ Գրիգոր առեալ զնշան տէրունական խաչին՝ եւ եկաց ի ձորակէն յանդիման բարձրաբերձ տեղւոյն շինուածոյն և ասէ. Հրեշտակ քո, Տէր, հալածեսցէ զնոսա։ Եւ ընդ բանին հողմ ուժգին բղխեաց ի խաչանիշ փայտէն, զոր ունէր ի ձեռին իւրում սուրբ եպիսկոպոսն. և երթայր հողմն լցեալ լերինն հաւասար, և չոգաւ հարթեաց տապալեաց ընկէց զամենայն շինուածն բագնայն, և այնչափ կորոյս, զի յետ այնորիկ ոչինչ*

յայնմ տեղւոջ նշմարէր գտանել, ոչ քարի և ոչ փայտի, ոչ ոսկի և ոչ արծաթ. ոչ բնաւ երևէր թէ լեալ ինչ իցէ անդ։ Եւ կոտորեցան մարդիկ պաշտաման քրմութեան որ ի տեղւոջ անդ էին, և անհետ եղեն ոսկերք նոցա» (Ագ. ՇԺԵ.)։ Թերևս հալեցան կամ լուծան ի շոգի։

Թողլով վայր մի զԱգաթանգեղոս՝ գանք ուրիշ պատմագրի մը, այն է Բուզանդայ։ Բուզանդ ևս չէ անտեղեակ երևելի երևելի դիպաց դարձին Հայոց։ Թերևս զարմանալի թուի եթէ ըսենք, թէ Բուզանդ, որ բամբասուած է իբրև տռասպելախօս՝ պատմական է մանաւանդ քան վկայաբանական։ Ո՛րչափ պարզ է և պարզութեամբն ճշմարիտ առ Բուզանդայ պատմութիւն առաջին քրիստոնէական շինութեանց ի Տարօն, լի մանր մանր տեղական հանգամանօք, ամենևին առանց յաւելուածոյ հրաշալեաց։ Օրինակ մի միայն բաւական է ցուցնել Բուզանդայ պատմութեան ոճոյն տարբերութիւնն Ագաթանգեղոսի պատմութեան ոճէն։ Բուզանդ խօսելով զԴանիելէ՝ «Էր սա, ասէ, ազգաւ ասորի, ունէր զաստիճան գլխաւորութեան Տարօնոյ, ի մեծն և առաջին եկեղեցին, ի մայր եկեղեցեացն Հայոց. զի յառաջ նախ անդ շինեալ էր (Գրիգորի) զսուրբ եկեղեցին և ուղղեալ սեղան յանուն Տեառն։ Նոյնպէս ի ներքոյ քան զնա Մարգարէանոցն Յովհաննու, նոյնպէս մօտ ի տուն Տեառն Հանգիստ առաքելոցն։ Այս տեղիք վասն յառաջակարգութեան, կանոնաւ ի հայրապետացն և ի թագաւորաց պատուեալք լինէին, որպէս ի Դարանաղեաց գաւառին յեկեղեցին Թորդանու պատուին վասն գերեզմանացն հայրապետին Գրիգորի։ Սոյնպէս և զյիշատակս թագաւորին Տրդատայ որ արժանին լեալ էր նախանձանօթ ի Քրիստոսն հաւատոց, զի սիրելի էր աշխարհին պատուել զյառաջընծայն Քրիստոսի զթագաւորն իւրեանց Տրդատ. նոյնպէս և զյառաջեպիսկոպոսն զնախավաստակն Գրիգորիոս. սոյնպէս և ի գաւառն Այրարատեան զնախավկայսն Քրիստոսի, ուր Գայիանէն և Հռիփսիմէն կային իւրեանց հանդերձ գործակցօքն. սոյնպէս առաւել և զնախեկեղեցին (կաթողիկէն)։... Այս տեղիքս սմա (Դանիելի) էին յանձն հանդերձ գաւառօքն. և էր սորա ընկալեալ զքորեպիսկոպոսութեան ձեռնադրութիւն աստիճանի ի ձեռաց մեծին Գրիգորի յաւուրս յորում կործանեաց զբագինսն մեհենիցն Հերակլեայ, այսինքն Վահագնի, որում տեղւոյ Աշտիշատն կարդացեալ։ Յորժամ յանապատաց ի շէնս իջանէր՝ ի գլխաւոր տեղիսն եկեղեցեացն լինէր։ Յաճախ յակն աղբերն ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն Հերակլեայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի, որում Ցուլն (Տաւրոս) անուանեալ կարդան, ի բազնին տեղւոջէ ի բացագոյն իբրև

քարընկէց մի ի ներքոյ կուսէ, ի դոյզն ծործորակին, ի սակաւ անտառակին, ի հացուտ պուրակին, որում տեղւոյն իսկ Հացեաց դրախտն կոչեն։ Այս այն աղբիւրն է, յորում առնէր յայնժամ և ս վաղ մեծն Գրիգոր զմկրտութիւնսն զօրացն բազմաց»։ Արդարև կ'ակնարկէ, բայց որչափ հարևանցի, թէ «նշանօք ինչ եղելովք կործանեցան բագինք մեհենիցն» (կուռք), բայց չըսեր ամենևին թէ մեհեաններ քանդուեցան, այլ թէ, ինչպէս բնական էր՝ «յանուն աստուածութեանն սրբեցան և եղեն տուն աղօթից և տեղի ուխտից ամենայն ումեք»։ Զայս ամենայն գիտէ Բուզանդ. բայց թէ Գրիգոր և Հռիփսիմեանք տանջեցան այնպէս անհնարին, ինչպէս կը պատմէ Ագաթանգեղոս. թէ ի վախճանի Գրիգոր ընկեցաւ ի վիրապն, ուր մնաց նա հնգետասան ամ, կերակրելով օրը նկանակով մի, զոր կը նետէր նմա կին մի այրի. թէ ի վախճանի այն հնգետասան ամաց Տրդատ փոխուեցաւ ի խոզ և գրեթէ բոլոր բնակիչք քաղաքին այսահարեցան. թէ Գրիգոր հանուեցաւ վիրապէն երկնային տեսլեամբ. թէ ի կործանելն մեհենից գունդք գունդք դիւաց կ'երևէին ի կերպարանս փախստական զօրաց. թէ ի մկրտել Գրիգորի բիւրաւորներ՝ գետին ջուրերը դարձան յետս, ծագեց լոյս սաստիկ, և օծման իւղն սկսաւ ման առնուլ շուրջ զբազմութեամբըն՝—այս և այլ սոցին նման սքանչելեաց նշմարանքն անգամ չկայ առ Բուզանդայ, թէպէտ ինչպէս տեսանք՝ մկրտութեան տեղն անգամ կը յիշէ Բուզանդ։ Արդարև զարմանալի է, որ Բուզանդ, որ չէ ազատ ի պատմելոյ նորանշանս՝ ի դարձին Հայոց Ագաթանգեղոսէ պատմուած հրաշից և ոչ մին կը յիշէ։

Այսչափ բաւական համարելով վասն դարձին Հայոց՝ գանք Լուսաւորչին տեսլեան, զոր կը դնէ Ագաթանգեղոս իբրև մարգարէութիւն, և որ կը ծառայէ մեզ գտնելու Ագաթանգեղոսի գրոց յօրինման թուականը։ Ագաթանգեղոսի մատեանն ոչ թէ, ըստ բանից մատենագրին, գրուած է յունարէն կամ հայերէն ի սկզբան Դ. դարուն Ագաթանգեղոս անուն քարտուղարէ Տրդատայ նորին իսկ Տրդատայ հրամանաւ—«Հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռոմայ... հասեալ ի դուռն Արշակունւոյ, յամս քաջի առաքինւոյ ուժեղ և պատերազմող Տրդատայ»,— այլ վկայաբանութիւններէ կամ զրոյցներէ (légende) հաւաքուած և գրուած հայերէն ձեռամբ միոյ յաշակերտաց թարգմանչաց Ե. դարուն կիսուն, այն է իսկ և իսկ զկնի պատերազմին Վարդանանց, որոյ պատմութիւնն իբր թէ ի տեսլեան ցուցուած է Գրիգորի, դարձեալ ըստ վկայութեան նորին Ագաթանգեղոսի։ Բանիբուն հեղինակն բաւական չհամարելով առնել զԳրիգոր Արշակունի թագա-

ւորաց ազգակից, խաստովանող և ճգնաւոր՝ կ՚ընէ զնա նաև տեսանող և մարգարէ։ Թողլով Գրիգորի տեսլեան ուրիշ մասերն՝ առնունք այն մասը միայն, որ կ՚ակնարկէ Վարդանանց ժամանակը։

Սև այծերու հօտեր ջուրն անցնելով կը փոխուին սպիտակ ոչխարներու, որք կը ծնանին լուսակերպ գառանց բազմութիւն, որոց մի մասն լինին գայլ և յարձակելով հօտին վրայ՝ կ՚ընեն կոտորած մեծ. բայց սպանուածներուն յանկարծ կը բուսնին թևք. և վերանալով կը խառնին լուսեղէն զօրաց մէջ, իսկ գայլերը կը տարուին կրակի հեղեղէ։ Ինչպէս յայտնի է՝ սև այծերու հօտն հեթանոս Հայք են, որ ջուրէն անցնելով, այն է մկրտութեամբ՝ եղան սպիտակ ոչխարներ. որոց սերունդէն ոմանք ջուրէն անդին անցնելով, այսինքն ուրանալով ի հաւատոյ՝ եղան գայլ, և կոտորեցին միւս մասը, որ մնաց հաստատուն ի հաւատս. բայց նոքա որ սպանուեցան գայլերէն, այսինքն ուրացողներէն՝ թռչելով խառնեցան ի գունդս հրեշտակաց։ Ահա բանք Ագաթանգեղոսի. «Եւ տեսի հօտս անթիւս այծեաց ի գոյն սևութեան, որք անցեալ ընդ ջուրն յօդիս դարձան, և զգոյնս իւրեանց ի կերպարանս սպիտակութեան շրջեցին, և լուսակերպ ասրն փայլէր առ հասարակ, մինչև ճառագայթք հատանէին ի նոցանէն։ Եւ մինչդեռ նայէի ես՝ յանկարծակի ծնան հօտքն և բազմացան, և ծնունդքն լցին զվայրս, և ծնեալ գառինքն ամենայն լուսակերպ էին։ Իսկ յանկարծ այլ ծնունդք յաճախեցին բազմացան. և կէսքն անկեալ էին յայնկոյս ջրոյն։ Եւ գառինքն գայլք եղեն թուխք, և յարձակեցան ելին ի մէջ հօտիցն, և սկսան կոտորել, և եղեն արեան ճաղպախիք։ Եւ մինչդեռ նայէի՝ և տեսի, և բուսան թևք հօտիցն և եղեն թևաւորք, և վերացան խառնեցան ի զօրս լուսեղէնս։ Եւ յարեաւ հեղեղ հրեղէն, և արկեալ տարաւ զգայլսն»։ Ահա և մեկնութիւնն, որ որպէս թէ կը տրուի Գրիգորի ի տեսլեան. «Հօտք բազմութեան այծեացն սևութեան, որք յիջանել ի ջուրսն յօդիս դարձան սպիտակութեան՝ աւադիկ աջն աստուածութեան շնորհացն ի ձեռն քահանայապետութեան հասանելոց է, յորոյ ձեռն բղխեսցէ աղբիւրն մկրտութեան, թողութիւն քաւութեան բազում մեղաւորաց։ Եւ լուսակերպն ասր նոցա փայլեալ պայծառացեալ էր, այսինքն մկրտեալք լոյս զգենլոց են և արքայութեանն խոստացելոյ արժանաւոր լինելոց։ Եւ զի ծնան հօտքն և բազմացան և լցին զվայրսն՝ այսինքն է—զբազում ժամանակս աճեցուցանէ քարոզութիւնն, և ծնանին նոր ծնունդք նորոգութեան, և բազմացուցանէ մկրտութիւնն։ Եւ զի կէսքն անցեալ ելեալ էին ընդ ջուրսն ի նոյն կողմն ուստի անցեալ էին՝ այսինքն է—ի յետին ժամանակն անօրինելոց

ձն, անկեալք ի ճշմարտութենէն, ընկենլոց են յետս զդրօշմ ուխտին սրբութեան, բազումք թողուն զուխտն սրբութեանն։ Եւ ի գառանցն լինելոց են գայլք, որ կոտորելոց են զսուրբ գառինս. այսինքն որ գնան ի ճշմարտութենէ անտի և յուխտէ քահանայիցն՝ լինելոց են գայլք, և հանեն ճաղճախիս արեան ի գառանցն, այսինքն ուխտին և քահանայութեանն, և խռովութիւն ժողովրդոցն։ Իսկ որ համբերէ միամտութեամբ ի գառանցն, ի ժողովրդոցն կամ ի քահանայիցն՝ թէ և առնուցուն և յարքայութիւնն Քրիստոսի վերանան. իսկ որ զմիտս գայլոցն կամ զգործս յափշտակութեան նոցա ունիցին՝ ի հուրն անշէջ մտանեսցին» (Ագաթ. ԾԲ.)։

Ո՞վ, անաչառ խորհելով, չտեսնէր, թէ անուանեալ քարտուղարն Տրդատայ Լուսաւորչին ընծայուած տեսլեան այս մասամբ կ՚ակնարկէ, իբր թէ մարգարէաբար՝ Վարդանանց պատմութեան, ուստի և կը մատնէ իւր գործոյն յօրինման ժամանակն, այսինքն սակաւ ամօք զկնի այն կրօնական պատերազմին, ի ձեռն Կորեան կամ միոյ յաշակերտակցաց նորա, որ ունէր Կորեան ոճը կամ լեզուն։

## ՎԵՐՋ ԵՐՐՈՐԴ ՄԱՍԻՆ։

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

## Երրորդ մասին:

---





Թիֆլիսի Հայոց Հրատարակչական Ընկերութիւն

№ 87

Ա. Մ. ԳԱՐԱԳԱՇԵԱՆ

# ՔՆՆԱԿԱՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ըստ նորագոյն պատմական, լեզուաբանական եւ բանասիրական տեղեկութեանց

## ՄԱՍՆ Դ.

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ

### ԺԱՄԱՆԱԿ ԱՆՏԷՐՆՋՈՒԹԵԱՆ, ՄԻՆՉԵՒ Ի ՎԱԽՃԱՆ Ե. ԴԱՐՈՒ:

ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ԵՒ ԿՐՕՆԱԿԱՆ ՇԱՐԺՄՈՒՆՔ։

ԹԻՖԼԻՍ
Տպարան Մ. Դ. Ռօտինեանցի
Типографія М. Д. Ротиніанца, Гол. пр., д. № 41.
1895

# ՄԱՍՆ Դ.

## ԺԱՄԱՆԱԿ ԱՆՏԷՐՆՋՈՒԹԵԱՆ, ՄԻՆՉԵՒ Ի ՎԱԽՃԱՆ Ե. ԴԱՐՈՒ։ ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ԵՒ ԿՐՕՆԱԿ՚ԱՆ ՇԱՐԺՄՈՒՆՔ։

# ՄԱՍՆ Դ

## ԳԼՈՒԽ Ա.

### ՀԱՅՔ ՅԱՆՏԷՐՆՋՈՒԹԵԱՆ: ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ԾԱՐԺՈՒՄՆ:

*1. Անարժան աթոռակալք զկնի Սահակայ: 2. Միտումն Հայոց Պարսից քաժնին ի Յոյնս. Ատենախօսութիւն Սահակայ: 3. Ծմուէլ. Արթնութիւն Սահակայ եւ Մեսրոպայ ի հսկել հօտին: 4. Տեսիլ Սահակայ. Յայտնութիւնք: 5. Վախճան վերջին թագաւորին Արտաշրի. Հայաստան կը զրպուի զօրօք: 6. Սպուղէք. Աշակերտք Սահակայ. Մահ նորա: 7. Մեսրոպ. Գիւտ հայերէն նշանագրաց. Առաքելական ջանք Մեսրոպայ: 8. Զարմանալի վկայութիւն մի: 9. Ջանք վասն Վրաց եւ Աղուանից: 10. Մահ Մեսրոպայ. 11. Ժամանակագրական ինչ տեղեկութիւն: 12. Պատմութիւն գիւտի նշանագրաց: 13. Թարգմանութիւն Գրոյն: 14. Առաքումն աշակերտաց: 15. Թուղթք Պրոկղի եւ այլոց առ Սահակ վասն Նեստորի: 16. Թուական առաքման եւ դարձի աշակերտաց: 17. Թէ ինչ պարտ է իմանալ թարգմանչօք: 18. Թէ Հայք յառաջագոյն եւս կ'երթային յուսումն ի Յոյնս: 19. ԿԱ. գրլուխ Գ. դպրութեան Խորենացւոյն, եւ յետին մատենագիրք ըզթարգմանչաց: 20. Կարծիք յետնոց զԽաչի ծառէն եւ զաշակերտաց թարգմանչաց: 21. Խորենացւոյն Գ. դպրութեան ԿԱ. գըլխոյն վրայ: 22. Ժամանակագրական խնդիր զառաքմանէ աշակերտաց յԱղեքսանդրիա ըստ Խորենացւոյն: 23. Հաւանական ժամանակ գրութեան ԿԱ. գլխոյ Գ. դպրութեան Խորենացւոյն եւ Ողբին: 24. Հնագոյն մնացորդք հայ լեզուին: 25. Ջանազանութիւն ոճոյ ի գրուածս Ե. դարու: 26. Մատենագրութիւն երկրորդ կիսոյ Ե. դարուն: 27. Խորենացի եւ գործք որ կ'ընծայուին նմա: Պատմութիւն պատկերին. Պատմութիւն Հռիփսիմեանց: Ճառք Հռիփսիմեանց եւ Վարդավառին. Գիրք Պիտոյից. Աշխարհացոյցն: 28. Եղիշէ եւ Փարպեցին: 29. Մամբրէ: 30. Դաւիթ Անյաղթ:*

**1.** «Իսկ Նախարարք մեր խնդրէին ի Վռամայ այլ աթոռակալ, և Վռամ ետ Նոցա զԲրքիշոյ ոմն Ասորի: Սա եկեալ վատթար ընկերակցօք, ածեալ ընդ ինքեան և կանայս տնկալուչս, անժուժա-

բար և աւելորդօք և յափշտակութեամբ վախճանելոցն վիճակաց վարեալ ամս երիս. որում տանել ոչ կարացեալ նախարարացն՝ դարձեալ աղաչեն զՎռամ՝ փոխել զնա և տալ զայլ ոք ըստ կրօնից նոցա. և կեսոցն ի նոցանէ զմեծն Սահակ խնդրեալ» (Խոր. Գ. ԿԴ.)։

Այսպէս յետ Բրքիշոյի նախարարք բաժնուելով երկու՝ մի մասը կը խնդրէ ի Վռամայ կաթողիկոս զո՛ և հաճի տալ Վռամ, միւս կողմն՝ զմեծն Սահակ։ Ըստ Խորենացւոյն՝ Անատոլիոս զօրավար կը խնդրէ ի Վռամայ տալ զՍահակ բաժնին Յունաց, եթէ ինքն չհաճիր պահել զնա. զնոյն կը խնդրեն նաև եպիսկոպոսունք և կցերն համօրէն։ Վռամ կը կատարէ երկու կողման ևս խնդիրը, կացուցանելով Շմուէլ զոմն ասորի՝ քաղաքական կաթողիկոս ընդ ձեռամբ մարզպանին, և զՍահակ՝ իբրև հոգևոր հովիւ, նմա յանձնելով վարդապետութեան և ձեռնադրութեան գործն հաւանութեամբ Շմուելի.—«Որպէս ասացաք, յերկուս բաժանեալ նախարարքն Հայոց՝ յերկաքանչիւրոցն առաքեցին խնդրել աթոռակալ յարքայէն Պարսից. Վաչէ Արծրունեաց տէր և Հմայեակ Աշոցայ տէր՝ զոր ոք և արքայ կամեսցի. իսկ Մանէճ Ապահունեաց տէր և Սպանդարատ Արշարունեաց տէր՝ զմեծն Սահակ. նաև զօրավարին Յունաց Անատոլեայ ի Կարնոյ զՀաւուկ ի Կուկայառճոյ (առաքէ), զի եթէ ոչ իցէ նմա հաճոյ ունել (զՍահակ) յիւրում բաժնին՝ տացէ զնա մասինն Յունաց։ Յղեցին և բազմութիւնք եպիսկոպոսացն հանդերձ երանելեաւն Մեսրոպաւ և բովանդակ ուխտիւ եկեղեցւոյն մաղթանս զքահանայն Տիրուկ, զորդի Մովսիսկան ի Զարիշատէ Վանանդայ։ Վասնորոյ հաւանեալ Վռամայ՝ զերկաքանչիւրոցն կատարեաց զխնդիր, տուեալ յաթոռ եպիսկոպոսապետութեանն զայլ ոմն ասորի Շմուէլ անուն, զի լիցի ընդդիմափառ մեծին Սահակայ և հակառակաթոռ. և գործ նմա զատուցեալ՝ զընկերել մարզպանին, կալ ի վերայ բաշխից հարկաց խնդրելոց և դատաստանաց և այլ աշխարհական կարգաց։ Եւ զմեծն Սահակ արձակեալ՝ թողու ի նա սակաւ գիւղս ի նորին տանէ, զի նստցի յինքեան, միայն իշխանութիւն ունելով վարդապետութեան սովորական կրօնիցն, և ձեռնադրութեան զայնոցիկ՝ զորոց և Շմուէլն յանձն առնուցու» (Խոր. Գ. ԿԵ.)։

2. Խորենացին հոս կը պատմէ Վռամայ յորդորելն զՍահակ ի հաւատարմութիւն, և Սահակայ բանիբուն ատենախօսութիւնն ի զարմացումն թագաւորին և բոլոր աւագանւոյն Պարսից, մինչև խոստանալ Վռամայ «արծաթ բազում» Սահակայ ի վարձ համարձակախօսութեան նորա։ Սահակ չընկալաւ զարծաթն, այլ ի ձեռն Սուրենայ խնդրեց շնորհս ինչ, որ տուեցան նմա. նախ՝ որ մարզպանք չունենային իշխանութիւն փոխելու նախարարաց աստիճան-

ներն, այլ պահուէր՝ ինչ որ սահմանեցաւ առ Արտաշրիւ (իմա Յազկերտիւ Ա.). երկրորդ՝ Հրահատայ որդւոյն, Գազաւոնի մանկան տրուէր Կամսարականաց բուն պատիւն, յորմէ ինկած էին, և կամ ուրիշ որ և իցէ նախարարական պատիւ։ Այս խնդիրք Սահակայ ընդունուեցան, և թոռին ևս նորա Վարդանայ սպարապետի տըրուեցաւ տանուտէրութիւնն Մամիկոնեան ցեղին.—«Բայց յարձակելն (Վռամայ զՍահակ) յանդիման իւր արարեալ ի բազմակոյտ ատենին ասէ. Երդմնեցուցանեմ զքեզ ի քոյին հաւատ՝ միամիտ կալ ի ծառայութեան մերում և ոչ խորհել իրս ապստամբութեան, պատրել ի մոլար հաւատակցութիւնն Յունաց և լինել կորստեան պատճառ Հայոց աշխարհին ի մէնջ, փոխել զբարերար անուն մեր ի չարաչար։ Յայնժամ կանգուն կացեալ մեծին Սահակայ, պարկեշտ և նազելի զինքն կազմեալ ի բեմբասացութեան ձևի՝ համեստ հայեցուածովք, համեստագոյն ևս ձայնիւ սկսաւ ճառել զերախտիս ծառայութեանն, և զապերախտն ի նոցանէ լինել, ընդ նմին և զկեղծաւոր քաղցրաբանութիւնն նոցա յանդիմանելով, և զդառնութիւն խորհրդոց և զգործս չարաչարս. յարելով ի նոսին զընդդիմաբանել անմիտ հայհոյութեանցն, զոր ասաց մոլար հաւատակցութիւն. և զնոցայն խայտառակելով պաշտամունս՝ կատարեաց ի հրաշալի աստուածաբանութիւն ըստ հանդուրժելոյ հեթանոսական լսելեաց, և ոչ զբովանդակ բանին զպայծառութիւն անհաւատիցն արկանել առաջի յայպանումն, որպէս զմարգարիտ ի խոզից կոխումն, այլ այնչափ կայծակնաճաճանչեցուցեալ՝ որով զգազազաղացան մոգուցն լեզուք, և հիացեալ ապկեաւ ինքնին թագաւորն, և ամենայն բազմութիւն հրապարակին անձնագեղայն Պարսից՝ յակճիռս կալով ականջել. մինչև հրամայեաց Վռամ արծաթ բազում տալ նմա իբրև քաջաբանի և ուժգնասրտի առն, համարձակախօսի առաջի այնքանոյ թագաւորի։ Այլ նորա ոչ առեալ՝ ասէ ցհամազգին իւր ցՍուրէնն Պահլաւ. Արծաթ նորա նմա լիցի. բայց դու հաւանեցուցես զնա տալ ինձ զերկուս զայս միայն. զգահ նախարարացն Հայոց, որպէս կարգեալ է յԱրտաշրէ և վարեցան մինչև ցայժմ՝ նորին օրինակաւ հրամայեսցէ և տայապայ, զի մարզպանք պարսիկք մի կարասցեն... փոխել ըստ կամաց իւրեանց։ Եւ միւս՝ զի դարձուսցէ զտուն ազգականին իմոյ և քոյ (քանզի Կամսարականք ևս էին Պահլաւ), զմանկանն Գազաւոնի զորդւոյն Հրահատայ, թէ ոչ յիւրում տեղ, զԱրշակունին յաչաղելով զանուն՝ գէթ ի կարգ ընկեցեալ՝ ընդ այլ նախարարսն թուեսցի, յորում տեղւոջ ինքն կամեսցի... մինչև Աստուած քաղցրասցի դարձուցանել ի կարգ հայրենի ընդ ձեռն որո՛յ և է թագաւորի։ Արդ ջանասցիս դու թուել զօրէն

համոզակեր թովչի։ Այնմ լսող եղեալ Վռամայ՝ հրամայէ զամենայն կատարել. և դարձեալ հաստատելով զթոռն նորա զՎարդան ստրատելատն ի տէրութիւն իւրոյ Մամիկոնենից՝ արձակէ ի Հայս» (Խոր. Անդ)։

Ամբաստանութիւն նախարարացն զՍահակայ, թէ էր «զՅունովք գլեալ խորհրդովն», Վռամայ ի բազմակողմ ատենին երդմնեցուցանելն զնա «միամիտ կալ ի ծառայութեան և ոչ խորհել իրս ապստամբութեան», չվստահելով Սահակայ և ոչ այլում հայ եպիսկոպոսի՝ երկիցս տալն զկաթողիկոսութիւնն ասորւոյ, և ի տալն Սահակայ զառաջնորդութիւնն հոգևոր, կացուցանելն զասորին ի վերայ նորա հսկող, և ուրիշ ակնարկութիւնք ինչ Խորենացւոյն՝ կու տան կարծել ոչ յանիրաւի, թէ Սահակ ունէր արդարև խորհուրդ ազատելու զազգն, եթէ էր հնար, ի լծոյ Պարսից և մուծանել ընդ իշխանութեամբ Յունաց։ Սահակ իսկ իւր պատասխանին մէջ առ Վռամ չուրանար, թէ չունէր կամ չկար ազգին մէջ ապստամբութեան կամ ի Յոյնս գլելու խորհուրդ, այլ կը յիշէ միայն զծառայութիւն ազգին, և զապերախտութիւնն Պարսից—«սկըսաւ ճառել զերախտիս ծառայութեանն, և զապերախտն ի նոցանէ լինել»։ Ուստի շատ հաւանական կը թուի, թէ Խոսրովու ժամանակէն իսկ Սահակ, և թերևս նախարարներէն և կղերէն ևս կարի մեծ մաս մը կը տածէին ապստամբութեան խորհուրդը, որ ոչ յետ բազմաց ելաւ ի լոյս առ Վարդանամբք։

**3.** Շմուէլ—ասէ Խորենացին, յառաջ տանելով իւր պատմութիւնը (Գ. ԿԶ.)—հետևեցաւ Բրքիշոյի, նա և անցոյց իսկ զնա յագահութեան մասին. չէր թողուր Սահակայ նոր եպիսկոպոս ձեռնադրել փոխանակ մեռելոց. նոցա եկամուտներն կամ ինք կը յափշտակէր և կամ կու տար Սուրմակայ. այսպէս լինէր չար օրինակ ուրիշ եպիսկոպոսաց առնել զնոյն՝ առնելով թիկունս զթագաւորն Պարսից կամ իւրաքանչիւր զիւր իշխան։ Մինչ եկամուտ կաթողիկոսունք այսպէս չարաչար կը վարէին կաթողիկոսութիւնը՝ Սահակ նստելով ի մայր եկեղեցւոջ Վաղարշապատու (Էջմիածին)՝ կը մատուցանէր անդադար, Մեսրոպաւ հանդերձ, իւր հաւատացեալ հօտին վարդապետութեան անխարդախ կաթը.—«Եկեալ Շմուէլի կալաւ զաթոռ եպիսկոպոսութեանն, հետևեալ վարուցն Բրքիշոյի, և առաւել ևս ագահութեանն մասամբ. զի նա զվախճանեալ եպիսկոպոսացն յափշտակեաց զվիճակ, այլ սա և զկենդանեացն. քանզի փոխանորդ մեռելոցն ոչ տայր թոյլ մեծին Սահակայ ձեռնադրել, և զկենդանեացն դոյզն ինչ պատճառս գտեալ խափանման հարկաց արքունի՝ հալածական առնէր, յինքն կորզելով զամենա-

ցուն տուննս։ Վասնորոյ ատեցեալ ի բնաւ եպիսկոպոսացն՝ արհամարհեալ լինէր. զի թէ բիւրապատիկ չարիս ի նմանէ կրէին՝ ոչ երբէք տեսանէին զնա, բայց ի Սուրմակայն յայնմանէ, զորոյ և մեծացոյց զվիճակն. արքունի հրամանաւ հանեալ ի բազմոց՝ նմա հաւատայր։ Ընդ որ նախանձեալ և այլ եպիսկոպոսաց՝ ժպրհեցան զնոյն առնել, խնդրելով ի Պարսից արքայէն օգնականութեամբ իւրաքանչիւր իշխանաց։ Այլ մեծն Սահակ ոչինչ կասեաց զհոգևոր կաթնն դիեցուցանել մանկանց եկեղեցւոյ հանդերձ Մեսրոպաւ, զոր թողեալ խարսխեաց յեկեղեցւոջն կաթուղիկէ որ ի Վաղարշապատ քաղաքի, ինքն կալով ի Բագրևանդ գաւառի, ի տեղւոջն ուր ծագեաց յերկնուստ լոյսն ի մկրտել սրբոյն Գրիգորի զՏրդատ արքայ և զբոլոր Հայսս» (ըստ պատմութեանն Ագաթանգեղոսի ԾԺԸ.)։

**4.** Շմուէլ կը վախճանի յետ հինգ ամաց, և նախարարք կը խնդրեն ի Սահակայ ունել զաթոռն առանձին, խոստանալով նմա առնուլ զհաճութիւն թագաւորին. բայց նա պատմելով նոցա մարգարէական իմն տեսիլ, որ, ասէ Խորենացին, եղած էր նմա ժամանակաւ՝ կը հրաժարի ընդունել նոցա խնդիրը, և նախարարք կը մեկնին տխրութեամբ.—«Բայց Շմուէլ կեցեալ ամս հինգ՝ մեռանի ի մերում աշխարհիս։ Յայնժամ ժողովեալ ի միասին ամենայն նախարարացն՝ չոգան առ մեծն Սահակ, և զմեզանս յանձն առեալ՝ աղաչէին զնա դարձեալ ունել զաթոռն. խոստանային ի Պարսից արքայէն հաստատել զնա, մուրհակ ամենեցուն կնքեալ՝ ազգաւ տալ թոռանց նորա զնոյն իշխանութիւն։ Այլ նա ոչ առնոյր յանձն. և ի բազում թախանձելոյ նոցա հարկաւորեալ՝ պատմեաց զտեսիլն, զոր յառաջ քան զբազում ժամանակս երևութացաւ նմա ի քուն ապագայից յայտնութիւնք։ Զոր լուեալ նախարարացն և գիտացեալ, թէ յաստուածային հրամանէ դադարեաց յազգէ նորա քահանայապետութիւնն, յարտասուս հարեալ, աւաղելով զինքեանս ըստ Աւետարանին բանի, թէ Հարկ է գալ գայթակղութեանն, բայց վա՛յ այնոցիկ ընդ ոյր ձեռն գայցէ գայթակղութիւնն՝ թոյլ ետուն նմա» (Խոր. Անդ)։

Յայտնութիւնք յանուն հին և նոր սրբոց, ինչպէս Ադամայ, Ենովքայ, Նոյի, Դանիելի, Պետրոսի, Յովհաննու, աւելի կամ նուազ ի պատուի յառաջնում դարու անդ քրիստոնէութեան՝ եղան արդարև, բաց ի միոջէն զոր ունինք ցարդ ի կանոնի Նոր Կտակարանին՝ առ սակաւ սակաւ անհետ, սակայն մնաց հետքն ի վարս ումանց ի նշանաւոր սրբոց։ Զարմանք չէ, որ Հայք ևս ունենային, յանուն երկու լուսաւորչաց իւրեանց Գրիգորի և Սահակայ՝ գոնէ երկուս, յորոց զմին կ'աւանդէ մեզ մատեանն Ագաթանգեղեան, և

զմիւսն Փարպեցին։ Ցայտնութիւնք, ἀποκάλυψις յոյն անուամբ, որ
կը համարուէին տեսլեամբ տրուած 'գուշակութիւնք «ապառնայից»,
ինչպէս կ'անուանէ Խորենացին, եթէ անաչառ քննուին՝ ոչ այլ
ինչ են՝ եթէ ոչ ընծայութիւն անցեալ դիպաց ոչ հեռի գրողին
ժամանակէն. բայց մարգարէական երևոյթ տալու համար պատմու-
թեան՝ կ'ընծայուի սրբոյ մը, որ ժամանակաւ յառաջ է քան ընծայ-
ուած դէպքը։ Ցայտնութեան ձևն է այս. յանկարծ կը բացուին
երկինք, կը ծագէ լոյս, կ'երևին այլաբանական նշանք և ցոյցք,
զորոց նշանակութիւնը չհասկանալով տեսանողն՝ կը նայի զարմաց-
մամբ, մինչև ոմն մարդակերպարան և կամ հրեշտակ գալով մի
առ մի կը մեկնէ տեսիլը։ Այսպիսի է Սահակայ տեսիլն, որ նմանու-
թիւն է տեսլեան Լուսաւորչին, և՛ արուեստիւ և՛ լեզուաւ խոնար-
հագոյն քան զնա։ Նպատակն է՝ Վարդանանց ժամանակին պատ-
մութիւնն, ուխտապահաց և ուրացելոց (զորս յայտնի իսկ կ'ակնարկէ
ուրեք), ցուցնել մարգարէական ոգւով կանխաւ յայտնուած առ Սա-
հակ՝ իբր նախախնամութեան խորհրդով սահմանուած։ Այս տեսու-
թենէն յայտնի է, թէ գրողն էր յետոյ քան զպատերազմն Վարդա-
նանց, ի միջոցի երեսնամեայ ժամանակին 452—482։ Խորենացին,
ինչպէս տեսանք՝ ասէ միայն, թէ Սահակ պատմեց տեսիլը—«պատ-
մեաց զտեսիլն». Փարպեցին աւելի յառաջ երթալով կու տայ նաև
տեսիլը, և ի վախճանի կը յաւելու ևս, թէ Սահակ գրեց զայն
երկնաւոր հրամանաւ, թէպէտ լեզուն չէ Սահակայ։ Փարպեցին
յետ երկրորդելոյ անհամ երկայնաբանութեամբ, թէ ինչպէս յետ
մահուն Շմուէլի նախարարք գալով առ Սահակ և խոստովանելով,
թէ յանցեան մեծապէս, մատնելով զթագաւորն իւրեանց Պարսից,
աղաչեցին զնա ընդունել միւսանգամ կաթողիկոսութիւնը, խոստա-
նալով առնուլ հրաման յարքայէն Պարսից, իսկ Սահակ մերժեց
զխնդիրն և պատմեց նոցա տեսիլ, զոր ունեցած էր շատ տարիներ
յառաջ՝—մէջ կը բերէ բուն տեսիլն այսպէս։—Որպէս թէ աղօ-
հացից հինգշաբթի մը, երեկոյեան պաշտաման ժամանակ, մինչ
դպիրք բազմօրեայ տքնութեանց պատճառաւ ծանրացեալք ի քնոյ
կը նիրհէին, կանթեղք և ճրագունք կը վառէին լի լուսով. և ըն-
թերցողն կը յապաղէր զընթերցուածն, սպասելով հաւատացելոց
բազմութեան ժողովելուն՝ Սահակ կը նստէր յեկեղեցւոջ Վաղարշա-
պատու, սեղանին մօտ լի թախծութեամբ, վասն զի չունէր արու
մանուկ։ Եւ ահա յանկարծ բացուեցաւ հաստատութիւնը, և ծագեց
լոյս համատարած։ Սահակ տեսաւ քեմ երկնաբերձ և քեմին վրայ
տետրասկեղ (τετρασκελής, այսինքն կազմած չորեքոտնեայ, զոր սովոր
են Ցոյնք գնել ի վերայ մաղզմայէն) ոսկի, սպիտակ կտաւով ծած-

կուած, և խաչ ի վերայ։ Ըստ մեկնութեանն որ տրուեցաւ Սահակայ՝ երկնից բացուել և լուսոյն տարածելն կը նշանակէին զգալուստն Քրիստոսի և զծաւալումն վարդապետութեան նորա. իսկ բեմն բարձր մինչև յերկինս՝ կը նշանակէր ճշմարիտ հաւատքը, որով կը վերանան մարդիկ առ Աստուած. և տետրակեղն ոսկի ծածկեալ մաքուր կտաւով՝ կը նշանակէր Աստուծոյ անհաս գիտութեան պատուականութիւնք և մաքրութիւնը։ Ցետոյ տեսաւ Սահակ, որ մեղմ օդ, օրինակ Հոգւոյն սրբոյ, շնչելով բացաւ զկտաւն, ընդ որով կայր սեղան ընդելուզեալ պատուական քարերով—նշանակ պատուական առաքինութեանց արդարոց, և հաց և ողկոյզ—օրինակ հաղորդութեան խորհրդոյն, որ է նշանակ չարչարանաց և մահուան Քրիստոսի։ Հացին և գինւոյն մօտ տեսաւ Սահակ ձիթենի պտղաւէտ, որմէ կը կախուէին չորս ոստք, երեքն հաւասարաչափ, չորրորդն կիսով չափ նոցա. այս չորս ոստք էին քան զայլ մասունս ձիթենւոյն նուազ և վտիտ պտղովք։ Ըստ մեկնութեանն՝ ձիթենին կը նշանակէր սէր և ողորմութիւն. երեք և կէս ոստք նշանակ էին երեք հարիւր յիսուն ամաց, այսինքն երեք և կէս դարուց, որ պէտի անցնէին մինչև ի գալուստ պղծոյն անապատի, և այս ոստոց պտուղներուն նուազութիւնք և ցամաքութիւնք կը ցուցնէր, թէ մարդոց սէրն և արդարութիւն պիտի նուազէին և ցամաքէին ի միջոցի այն դարուց։ Պիղծն անապատի կը թուի նշանակել հոս զՅազկերտ Բ, հալածիչն Հայոց. իսկ երեքհարիւր և յիսուն տարին չունի ամենևին նշանակութիւն. գրողը կը դնէ տարիներու այս հաշիւը՝ նմանցնելու համար իւր տեսիլը Դանիէլի և Յովհաննու Յայտնութեանց։ Բեմին ձախ կողմը կը տեսնէր Սահակ աթոռ չորեքկուսի ծովագոյն, և ի վերայ նորա սկուտեղ արծաթի, ծածկուած թխագոյն կտաւով, և սկուտեղին վրայ նափորտ բեհեզեայ ծալեալ, և գունդ ոսկի։ Աթոռը նշան էր թագաւորութեան և քահանայութեան. ծովու. գոյնը և թխագոյն կտաւը կը նշանակէին ծփումն և թանձր սուգ, որ պիտի գար ի վերայ Հայոց և համօրէն աշխարհի. արծաթի սկուտեղն էր բանն Աստուծոյ, զտեալ և փորձեալ իբրև արծաթ, ինչպէս նափորտին ծալուած և գունդին դատարկ կենալը կը նշանակէր քահանայութեան դադրելը Գրիգորի ցեղէն, և թագաւորութեանն՝ Արշակունեաց ազգէն։ Սկուտեղին վրայ կար նաև մագաղաթ չորեքկուսի կտրուած, այսինքն ի ձև մատենի, որոյ ի սկզբան կային տողք ինչ ոսկեգիր, անտի ի խոնարհ դէպ ի մէջն ուրիշ ջնջուած տողեր, և ապա դէպ ի վայր դարձեալ մի և կէս տող ոսկեգիր, և անտի մինչև ի վերջ տողին կարմրագիր։ Ըստ

մեկնութեանն՝ առաջին ոսկեգիր տողերը կը ցուցնէին Լուսաւորչին
ցեղէն նստող կաթողիկոսներն, և ընչագիր տողք՝ նոյա յաջորդող
անարժան կաթողիկոսներն. իսկ վերջին մի և կէս ոսկեգիր տողք
կը ցուցնէին զՍահակ և զՄեսրոպ, որ խաղաղութեամբ կը վախ-
ճանին. իսկ կարմրագիր կէս տողն՝ զՅովսէփ, որ յետ համբերելոյ
բազում նեղութեանց՝ արեամբ կնքեց զկեանս իւր: Շուրջ զսկուտեղ-
բըն տեսաւ բազմութիւն մանկանց և աղջկանց, ոմանք կարմրագոյն,
այլք երփն երփն պատմուճանօք. այս կը նշանակէր ըստ մեկնու-
թեանն՝ Սահակայ թոռներն, այսինքն զՎարդան և զայլս հանդերձ
ուխտապահ նախարարօք, յորոց ոմանք վկայեցին արեամբ, և այլք
հանդերձ կանամբք պայծառացան գունակ գունակ առաքինու-
թեամբք: Ի վախճանի շարժեցաւ աթոռն, և մանկտին, արու և
էգ, երիտասարդանալով առին թև և թռան յերկինս. այս կը նշա-
նակէր, թէ բարի մարդիկ աշխարհի վրայ այսպէս նեղութեամբք
հասնելով ի չափ կատարելութեան՝ ի վախճանի կը թռչին յերկինս
սուրբ մահուամբ: Հուսկ ապա կը վերանայ տեսիլն, և այն որ կը
մեկնէր՝ կը պատուիրէ Սահակայ կնքել տեսիլը: Կնքելն կը նշանակէր՝
թէ էր այն յաւիտենական վճիռ որ պիտի կատարուէր անվրէպ:
Սահակ իբրև ի քնոյ զարթնլով՝ կը փառաւորէ զԱստուած, որ ար-
ժանացոյց զնա այսպիսի մեծ և ահաւոր տեսլեան, և կը լռէ. բայց
վախնալով թէ իբրև ծածկող պատժուի Աստուծմէ, որ և գրով իսկ
աւանդել պատուիրած էր՝ պատմեց իւր մտերիմներուն: Ահա բանք
Փարպեցւոյն.—«Յառաջ քան զամս բազումս—ասէր Սահակ—խոր-
հուրդք անմխիթարք նեղէին զիս, անդադար զմտաւ ածելով և ա-
ղաչելով զԲարձրեալն՝ շնորհել ինձ արու որդի որպէս և նախնեացն
իմոց, որք յառաջ քան զիս էին ամուսնացեալք յաղագս որդեծնու-
թեան:.. Եւ էի ես ի մեծի հինգշաբաթոջն ի զատկի աղուհացիցն
ի հսկման, հաղորդեալ ի ժամ երեկոյին պաշտաման սրբոց և խոր-
հրդոյ կենարարին, ճաշակեալ այլ բնաւ ուտելի ինչ ոչ՝ բայց հաց
և ջուր և աղ... և դասք պաշտօնէիցն ընդ նստելն ծանր նիրհ-
մամբ ի սաստկութենէ բազմօրեայ տքնութեանցն՝ որպէս կիսա-
մեռ.ք եղեն, որոց զաւուրս քառասնորդացն ուժգին պահօք և ան-
դադար աղօթիւք զցայգ և զցերեկ հանեալ էր... Եւ լոյս ճրագացն
և կոնթեղաց բորբոքեալ տոչորէր, և ընթերցողն կամաւ յերկարէր
զկարդացմունսն յաղագս սակաւ մի ոգի առնլոյն և բուելոյ պաշ-
տօնէիցն առաջարկութեան կանոնին, մնալին և ժողովրդոցն բազ-
մութեան ժողովելոյ ըստ սովորութեան ի պաշտօն գիշերոյն... և
ես նստէի մերձ առ սեղանն Աստուծոյ ի սուրբ եկեղեցւոջն Վա-
ղարշապատ քաղաքի: Եւ ահա յանկարծակի բացաւ հաստատու-

քթիւնն վերին, ընդ որ ծագեալ լոյսն սաստիկ՝ ելից զամենայն երկիր։ Եւ կանգնեալ երեւեցաւ ինձ յերկրի բեմ չորեքկուսի ամպեղէն, որոյ բարձրութիւնն հասանէր մինչեւ յերկինս, լայնութիւնն տարածեալ լնոյր զամենայն երկիր։ Եւ ի վերայ բեմին երեւէր տետրասկեղ յասկւոյ սրբոյ խորանարդ, ըստ արժանի սպասաւորութեան Տեառն, ծածկեալ յոյժ բարակ կտաւով սպիտակափայլ գունով։ Եւ ի վերայ խորանաձեւ ծածկութեան յայտնապէս նշան տէրունական խաչին երեւէր։ Եւ յանկարծակի եղեւ շնչիւն խաղաղասիգ օդոյ, եւ բացաւ փեղկ մի ծածկութի կտաւոյն. ընդ որ հայեցեալ տեսի, եւ ահա կայր ի վերայ բեմին սեղան չորեքկուսի ականակապ ի բազմազունի ականց պատուականաց ընդելուզեալ։ Եւ ի վերայ սեղանոյն կայր հաց մի սուրբ եւ ոսկոյզ մի խաղողոյ ըստ պատուական խորհրդոյ երկնաւոր փրկութեան։ Եւ մերձ առ սուրբ խորհուրդն երեւէր ծառ մի ձիթենի վարսաւոր պտղալից յոյժ, զորոյ ոչ կարէի առնուլ զչափ բարձրութեանն եւ լայնութեանն, որոյ բերն էր բազմապտուղ եւ ատոք, եւ տեսիլն եւ գեղեցկութիւնն անպատում եւ սքանչելի։ Եւ որոշեալ չորք ոստք ձիթենւոյն ի խոնարհ կողմ երկրի ձգտեալ մօտէին. որոյ երեք ոստք միաչափ եւ հաւասարակապտուղք երեւէին, եւ չորրորդն ի նոցանէ որպէս կիսաբաժին եւ նուազապտուղ ըստ երկայնաչափութեան երիցն երեւէր։ Եւ պտուղք չորեցունց ոստոցն ոչինչ բնաւ էին նմանք եւ կամ հաւասար պտղաբերութեան եւ պտղաբոյծ ատոքութեանն այլ պտղոց ձիթենւոյն, այլ նուազք թուով եւ վտիտք ատոքութեամբ, որպէս թէ ծնկեալ էին։ Եւ ընդ ահեկէ բեմին աթոռ մի բարձր չորեքկուսի ծովագոյն սառնակերպ, եւ ծածկեալ թանձր կտաւով թխագունիւ։ Եւ վերացեալ կտաւն ի շնչմանէ քաղցր օդոյն եկելոյ՝ տեսի, եւ ահա սկտեղ արծաթի մեծ ի վերայ աթոռոյն։ Եւ ի վերայ սկտեղն կայր նափորտ մի բեհեզեայ ծալեալ եւ եդեալ,՟ եւ առ նմին գունդ մի ոսկի բոլոր, եւ մագաղաթ հատուածաձեւ չորեքկուսի, գրեալ ի սկզբանն կարգս ինչ սակաւ՝ ոսկետեսիլ գրով սքանչելապէս, իբր թէ ձեռամբ գրչի ճարտարի, եւ ի միջոյ կողման մագաղաթին հեռի յոսկեգիր կարգացն երեւէին այլ կարգք ինչ եղծեալք ջնջեալք, որոց ոչինչ բնաւ երեւէր տեսիլ գրոյն եւ կամ կերպարան։ Եւ հուսկ յեզր մագաղաթին հեռի ի ջնջագիր կարգացն դարձեալ տեսանէի այլ եւս կարգ մի եւ կէս կարգ գրեալ ոսկեգիր գրով առաւել սքանչելապէս, ըստ տեսոյ առաջին կարգացն գրելոց ի սկզբանն մագաղաթին։ Եւ կիսագիր կարգն մինչեւ ցմիջոց գրոյն եւ եւս առաւել էր ոսկւով, եւ այլն ցկատարումն՝ կարմրադեղով երեւէր։ Եւ կային շուրջ զծնօտիւք սկուտեղն անթիւ բազմութիւն տղայոց արուաց, այլ սակաւ եւ իգաց. ամենե-

քեան պայծառացեալ լուսազգեցիկք էին։ Բայց ճառագայթ փայլման պատմուճանաց նոցա էր որ կարմրագոյն արձակէին նշոյլս, և էր որ այլ երփն երփն և գոյնս ազգի ազգիս։ Եւ դէմք ամենեցուն ի սուրբ սեղանն հայէին, չդարձուցեալ բնաւ և ոչ ուրեք զաչս իւրեանց ի խորհրդոյն փրկութեան։ Եւ սկսաւ յանկարծակի սաստկապէս դղրդմամբ շարժել աթոռն։ Եւ զմանկտին զոր տեսանէի ի տես տղայութեան՝ առժամայն վաղվաղակի փոփոխեալս ի հասակ երիտասարդութեան՝ կատարեալք լինէին, և եղեալ թեւազգեցիկք ի վեր ի սուրբ սեղանն, որ էր ընդելուզեալ ի բազմագունի ականց, թռուցեալ բնակէին։ Եւ համբարձեալ սուրբ սեղանն հանդերձ նոքօք ի վեր քան զբարձրութիւն հաստատութեան երկնից ծածկէր։ Եւ այսպէս եղեալ աներևոյթ տեղիլն ամփոփէր, և ես ի մեծ զարհուրումն ընկղմեալ ապշէի։ Եւ ահա յանկարծակի կերպարան մարդոյ երևէր ինձ յերկնից, այր լուսեղէն, որոյ տեսութիւն սաստկութեան լուսոյն մռայլեցուցեալ ծածկէր զարեգականն լոյս։ Եւ ալեցեալ այրն հասանէր ուր եսն կայի. և իմ առաւել ևս հիացմամբ ապշեալ ի փայլակնացայտ երևմանէ առնն՝ անկայ վաղվաղակի գողալով ի վերայ երեսաց իմոց յերկիր. և նորա բուռն հարեալ կանգնեաց զիս, և հաստատեալ կացոյց ի վերայ ոտից իմոց, և ասէ ցիս. Քաջալերեաց, զօրացիր և մի երկնչիր, այլ հաստատեա զսիրտ քո յանուն Հզօրին... որ եցոյց քեզ զմեծ խորհուրդ յառաջատես արարչութեան իւրոյ։ Եւ իմ ուշաբերեալ զօրացայ ի բանէ նորա և կանգնեալ կացի ի վերայ ոտից իմոց։ Եւ ասէ ցիս. Վասն էր ես տրտում, և կամ ընդէր զբաղմունք նանրութեան պղտորեն զմիտս քո... վասն չլինելոյ քեզ արու որդի։... Գթալով ի քեզ Բարձրեալն վասն սիրելոյ զքեզ՝ կամեցաւ դարձուցանել ի քէն զայդպիսի մտածութիւնս, և մխիթարեաց զքեզ տեսլեամբդ այդուիկ, որ ցուցաւ քեզ յայտնութիւն մեծ... որպէս նախնոյն քում առն Աստուծոյ սրբոյն Գրիգորի։ Եւ արդ լուր և պատմեցից քեզ զմեկնութիւն մեծի յայտնութեանդ... Ն. դու ունկնդիր եղեալ բազում զգուշութեամբ գրեա ի տախտակս սրտի քո անմոռաց, զոր և ի մագաղաթի դրոշմեալ թողցես հաւատացեալ ժողովրդոց։ Զբանալ հաստատութեան երկնից զոր տեսեր, և զտարածել լուսոյն ընդ ամենայն երեսս երկրի՝ քանզի ահա ի գալստենէ կենարարի Որդւոյն Աստուծոյ բացեալ է դուռն շնորհի ողորմութեան նորա առ ամենեսեան, յորս ծագեալ լուսաւորէ լոյս փառաց վարդապետութեան նորա։ Բեմն չորեքկուսի կանգնեալ, որ երևեցաւ քեզ բարձր յերկրէ մինչև յերկինս՝ հաւատոյ ճշմարտութեան է, որով վերանան արդարքն ի ծանրութենէ աշխարհիս կենաց ի թեթևութիւն երկնից բնակութեանն։

Եւ զի ամպեղէն գունով երևեցաւ բեմն՝ վասնզի որ վերացաւն ամպով՝ նոյն գալոց է վերացուցանել ընդ իւր զարդարս։.. Եւ տեսարանեզն ոսկի որ ի վերայ բեմին, զորով էր արկեալ մաքուր կտաւն բարակ, որով ծածկեալ էր սուրբ սեղանն և որ ի նմա խորհուրդն՝ գիտես և ծանիր, զի ծածուկ և անյայտ է խորհուրդ աստուածային գիտութեանն պատուականութեամբ և մաքրութեամբ ըստ պատուականութեան մաքուր ոսկւոյն և լուսափայլ մաքրութեան կտաւոյն։... Եւ զի եղեալ օդ քաղցրաշունչ երաց զմասն ինչ կտաւոյն՝ իմա, զի ցուցան քեզ սուրբ Հոգւոյն քաղցր խաղացմունք, որ յայտ առնէ սրբոց իւրոց զխորհուրդ ծածկեալ աստուածութեան իւրոյ։ Սեղանն ոսկի ի պատուական ականց ընդելուզեալ որ կայր ընդ կէտաւով ծանուցանէ զվարս և զճգնութիւն արդարոցն, որպէս ըղպատուական ականց զանազանումն... Իսկ ըստ երևելոյ քեզ հացն և ողկոյզն ի վերայ սեղանոյն՝ յայտ առնէ զօրինակ մարմնոյ և արեան կենարար չարչարանացն։ Իսկ երևումն քեզ սքանչելատեսիլ ձիթենւոյն, որ էր հուպ առ տէրունեան խորհրդն, բարձր և վարսաւոր բազմաբեր պտղալից՝ զտուրս և զողորմութիւն և զսէր մարդկան որ առ միմեանս՝ եցոյց քեզ ընդունողն։ Զանզի մօտ և առաջին և պատուական Աստուածութեանն է աղքատսիրութիւն, որով և առաջին արդարքն ընտիրք երևեցան... առանց որոյ և կուսանացն արհամարհեալ վաստակք կուսութեան՝ արտաքոյ հարսանեացն ընկեցան։ Օովաւ ճանաչի յանձինս մարդկան կնիք քարոզութեանն Քրիստոսի որ ասացն, թէ Յայսմ ծանիցեն ամենեքեան զձեզ թէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս... և Տէրն փառաց բնակէ ի մէջ նոցա, շնորհելով զհանդիստ և զառատաբար պտղաբերութիւն երկրի, որպէս տեսանէիր բարձր զձիթենին և լիապտուղ և վարսաւոր։ Եւ զի ոստք չորք ձիթենւոյն, որ ի խոնարհ կողմ երկրի ձգեալ երևեցան, երեք ոստք հաւասարակատեսք չափով և միաթիւք պտղովք, և չորրորդն կիսաչափ երիցն և պակասաւոր ըստ պտղաբերութեան, և չորեցունց պտուղք վտիտ էին և թառամք, և բերքն պակասք և աննմանք քան զայլ առօքատեսիլ պտուղս ձիթենւոյն՝ լուր և ասացից զոր ինչ սահմանեաց Բարձրեալն յայսմ հետէ մինչև ի վախճան աշխարհիս. Երեք տասներեակք ամաց և կէս տասներեկի համառօտեսցին ի վերայ ամենայն աշխարհի մինչև յերևումն պղծոյն յանապատի, զոր Դանիէլ մարգարէի ասացեալ է սուրբ Հոգւոյն. և լինին սոքա յայտնապէս թուով ամք երեքհարիւր յիսուն, ըստ միազոյգ պտղոց երից ոստոցն և կիսոյն։ Եւ զի տեսեր զպտուղ ոստոցն թառամս և ծնկեալս և ոչինչ բնաւ նմանս այլ պտղոցն որ ի ձիթենւոջն էին՝ տես ճըշ-

մարտապէս և ծանիր, զի բարձեալ է սէր և արդարութիւն յամենայն մարդոց, որք ստութեամբ և ոչ ստուգութեամբ կարծեցուցանեն զանձինս սիրունս և պատուիրանապահս։․ Եւ ընդ ահեկէ բեմին որ ցուցաւ քեզ աթոռ չորեքկուսի ծովագոյն սռնակերպ՝ զնստումն գահու քահանայութեանն և թագաւորութեան ցուցանէ… յորոյ վերայ կայր սկտեղն արծաթի․ քանզի իբրև զարծաթ ընտիր և փորձ լուսափայլ յամենայն ազգս ընդունողաց սփռեալ տարածեցաւ բանն, զոր սաղմոսերգն վարդապետէ սուրբ Հոգւովն յասելն, թէ Բանք Տեառն որպէս զարծաթ ընտրեալ և փորձեալ։ Եւ զի երևեցաւ քեզ ծովագոյն սռնմանման տեսիլ աթոռոյն՝ նշանակեալ ցուցանէ զծփումն ալէկոծութեան աշխարհիս Հայոց․ քանզի և թխագոյն թանձր կտաւոցն ծածկումն զօրինակ բերէ զթանձրամած սգոյն, որ ունելոց է զաշխարհս ամենայն։ Եւ նափորտն բեհեզեայ, զոր տեսանէիր ծալեալ և եդեալ ի վերայ սկտեղն, և գունդն ոսկի որ կայր մերձ նափորտանն՝ նշանակէ մինն զքահանայութիւնն, և միւսն զթագաւորութիւնն։ Եւ զի ոչ ոք էր արկեալ զիւրեաւ զնափորտն, և ոչ այն ոք էր որ զգունդն ունէր ի ձեռին՝ լուր ստուգապէս, զի լռեսցէ մերձ ընդ մերձ թագաւորութիւն յազգէդ Արշակունեաց, և քահանայութիւն ի ցեղէ արժանաւոր քահանայապետին Գրիգորի։ Եւ մագաղաթն հաստուածաձև, որ ցուցաւ քեզ գրեալ ի սկզբանն կարգս ինչ ոսկեղէն գրով՝ զձեռնադրութիւն արանց սրբոց եցոյց քեզ շնորհք Հոգւոյն սրբոյ․ որք ի զաւակէ երանելոյն Գրիգորի յաջորդեն արժանապէս զաթոռ քահանայապետութեան՝ նոքա են արք ընտիրք գրեալք ոսկետեսիլ գրով ի դպրութիւն կենաց։ Եւ զի երևեցաւ ի միջոյ կողմն մագաղաթին հեռի յոսկեգիր կարգացն կարգք ինչ խանգարեալք և ջնջագիրք՝ գիտեա զի նստելոց են քահանայապետք ոմանք յաթոռ սրբոյն Գրիգորի, որ ոչ ըստ հրամանի սրբոց առաքելոցն և ոչ ըստ կանոնի պատուական սուրբ ժողովոյն երեքհարիւր ութուտասանցն լինին ձեռնադրեալք յերկնաւոր պաշտօնն, այլ ըստ փառաց աշխարհիս ձգտին ի պատիւն յանդգնութեամբ, որք են արծաթասէրք առաւել քան աստուածասէրք։ Եւ վասն զի խոտան և օտար է քահանայապետութիւն նոցա և ոչ ըստ հաճոյից Բարձրելոյն՝ ջնջեալ են նոքա ի դպրութենէ երկնից։․․․ Եւ այլ կարգն և միւս ևս կէս կարգի, որ երևեցաւ քեզ գրեալ սքանչելապէս ոսկի գրով ի ստորին եզեր մագաղաթին՝ ծանիր հաւաստեաւ, զի մերձ յերևումն պղծոյն անապատի դարձեալ յառնէ թագաւոր յազգէդ Արշակունեաց, և նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւիղէ սրբոյն Գրիգորի, վասն զի ոչ էին արհամարհեալք և ընկեցեալք յերկիր ի կոխումն, այլ կայր

գունդն, և ծալեալ պատուականութեամբ ցուցաւ քեզ նափորան. և ծանոյց զայս վերին ազդեցութիւնն սքանչելատեսիլ ոսկեգիր կարգովն և կարգակիսաւն, թէ ի ժամանակս գոռոզացելոյ թշնամւոյն արդարութեան նստցի քահանայապետ արդար ի ճշմարիտ վիճակէ ցեղին սրբոյն Գրիգորի. և քահանայացեալ առաջինն կատարէ զաւուրս իւր կրեալ ճգնութիւնս բազումս ի սուտ առաքելոց իշխանին կորստեան, և վախճանի խաղաղական հանգստիւ և ոչ սրով: Եւ միւս զաւակ նորին յաջորդեալ զաթոռ քահանայապետութեանն, և բազում և ազգի ազգի համբերեալ քերանաց և գանից և սովոյ և հալածանաց և դառն նեղութեան ժամանակս բազումս՝ յանօրէն իշխանին դահճացն սրով ընկալցի զվախճանն մարտիրոսութեան: Այն է զի ցուցաւ քեզ ի կարգին մասն մի գրելոցն կարմրագեղով: Եւ որ երևեցան քեզ բազմութիւնք տղայոց շուրջ կալով ի վերայ արծաթ սկտեղն, զուարթատեսիկ ցնծալից ուրախութեամբ՝ զի ահա յարգանդէ զաւակին որ տուաւ քեզ յԱրարչէն՝ ելցեն բազում շառաւիղք, արք ընտիրք զօրութեամբ, ընդ որս միաբանեալք և այլ բազմութիւնք լաւ արանց յազգէ նախարարացդ Հայոց, որք զօրացեալք սուրբ բանիւն Աստուծոյ՝ զյարուցմունս թագաւորաց և զսպառնալիս իշխանաց առ ոչինչ համարեալ արհամարհեսցեն, միացուցեալ զանձինս ընդ յոյսն բաղձալի երկնաւոր կոչմանն, չհայելով ի մեծութիւնս սնոտի և ոչ ի փառս առժամայնս. ընդ որոյ վաճառեալ ոմանց զփառս անեղծին Աստուծոյ ընդ սնոտի և ապականացու կենաց աշխարհիս՝ ուրացողք լինին. վասն զի մօտ է առ դուրս վաճառ՝ թուլացելոցն ի կորուստ, և հասեալ կայ հուպ օգնութիւն՝ զօրացելոցն ի փրկութիւն: Յորս և դու հայեցեալ շնորհի ակամբ տեսեր շուրջ զաստուածային սեղանովն պարելով զտղայսն. չհայելով բնաւ ի սայթաքմունս սնոտի հեթանոսական պաշտամանն. յորոց ոմանք կատարելութեան հասեալք՝ մարտիրոսական պսակին լինին արժանիք: Եւ այլք յարանց բազմաց, և ոչ միայն յարանց, այլ գտանին և ի կանանց, որք թէպէտև ոչ սրով, այլ ի շնորհաց սուրբ Հոգւոյն զօրացեալք բազում բարեգործութեամբք կատարին: Որպէս երևէին քեզ լուսափայլ նշոյլք արձակեալք ի մանկտւոյն, յորոց կարմրագոյն փայլմամբ երփնէր գոյնն՝ զկատարելոցն արեամբն ցուցանէ գուշակելով զնահատակութիւն. և զայլոցն պէսպէս ճառագայթիւք ցուցանէր զշողումն, որպէս և զբազմափայլ գոյնս լուսաւորութեան առաքինի մարդոյ. վասն զի բազում են և անթիւ ճգնութիւն և վաստակք արանց արդարոց և սրբոց: Եւ վասն զի շարժեցաւ սաստիկ գղորդմամբ աթոռն զոր տեսեր, և որ երբեմն տղայք քեզ երևէին, յաճումն կատարելութեան բովանդակեալք

յերկրէ յերկինս թռուցեալ Համբարձան՝ բովանդակապէս քեզ զերկրիս կենցաղս արդարոցն և յերկինս ցլինելոց նոյա զհրեշտականման փոփոխումն եցոյց պարգևատուն բարեաց։ Քանզի իբրև զաղայ յաշխարհի կացին արդարքն անմեղութեամբ, չդարձուցանելով և ոչ ուրեք զհայեցուածս մտաց իւրեանց ի զբաղմունս նանրութեան, այլ ուշադրեալք ի հրաւիրումն երկնաւոր ուրախութեանն ևեթ հայէին։ Քանզի բազում և խիստ դղորդմունք յայսմ հետէ լինելոց են յաշխարհի, յարուցմունք թագաւորաց ի վերայ միմեանց, սովք և սատանութիւնք և բազում նեղութիւնք, որք զմօտալուտ գալուստ որդւոյն կորստեան նշանակեն։.. Եւ դու կնքեա զտեսիլդ որ ցուցաւ քեզ յայտնութիւն ի բարձանց. քանզի ոչ վրիպեսցի այտի բան մի՝ մինչև կատարեսցի ամենայն։

«Եւ ես իբրև ի քնոյ զարթուցեալ ի տեսլենէն, զոր եցոյց ինձ Բարձրեալն, և ի զարմացման մեծի եղեալ՝ փառաւորեցի զմարդասէրն Աստուած, որ արժանի արար զանարժանութիւնս իմ այսպիսի մեծ և ահաւոր տեսչութեան։ Եւ լռեալ դադարեցի ի յայտնելոյ զայս ումեք մինչև ցայսօր ժամանակի։ Եւ արդ պատմեցի ձեզ ոչ միայն առ նեղել սրտիս, այլ թաքուցանել երկուցեալ, զի մի իբրև զլացօղ պատուհասեալ դատեցայց ի ցուցողէ յայտնութեանս այսորիկ, որ և գրով իսկ հրամայեաց ինձ զաւանդս զայս թողուլ աշխարհի»։

Աւելորդ է ասել, թէ տեսիլս այս, զոր իբրև յԱստուածուստ յայտնութիւն առ Սահակ կ'աւանդէ մեզ Փարպեցին՝ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ կեղծիք բարեպաշտ քրիստոնէի, այն դարերուն ճաշակին յարմար՝ հոգևոր, շատ անգամ ցուրտ այլաբանութիւններով լի, զորս այսպէս երկար մէջ բերել արդարև չէր արժեր, եթէ պատմութեան կարգը և դարուն ոգին ցուցնելու հարկը չպահանջէին։ Բարեմիտ նախնիք մեր քրիստոնէական եռանդով վառեալ, մոլեռանդ բարբարոսներու բռնութենէն մատնուած սաստիկ հալածանաց, տանջանաց և մահու անգամ, զոր միշտ առաջի աչաց կը տեսնէին, կրնայի՞ն ա՛յլ ազգ մխիթարուիլ և զօրանալ՝ եթէ ոչ խրատուելով նկատել զայն ամենայն իբր բարձր տեսչութեան մի իմաստութենէն պատրաստուած գաղտնիս, զոր քննել յաստիս չէ տրուած մարդոյ։ Այս տեսութեամբ պարտ է ընթեռնուլ հին պատմութեան մէջ սմին նման ձանձրալի կտորներ։ Գիտել արժան է սակայն, թէ բարեպաշտ հեղինակն, ո՛ ոք և է, համբակ էր իւր արուեստին. քանզի կու տայ գուշակել առ Սահակ իբր յայտնութեամբ թէ Լուսաւորչայ ցեղէն պիտի նստէին ժամանակ մը կաթողիկոս ընտիր անձինք, որոց պիտի յաջորդէին յետոյ անարժան մարդիկ. բայց այս եղաւ յառաջ

քան զՍահակ, մինչ տեսիլը որ է մարգարէութիւն՝ ապագային համար է և ոչ անցելոյն. Նա մանաւանդ այն յայտնութեան մէջ իբր ապագայ ցուցուած անձանց մին է նոյն ինքն Սահակ։ Ապաքէն զՍահակ կ'ակնարկեն սա բանք. «Ի ժամանակս գոռոզացելոյ թշնամւոյն արդարութեան (Յազկերտի Ա.) Նստցի քահանայապետ արդար ի ճշմարիտ վիճակէ ցեղին սրբոյն Գրիգորի, և քահանայացեալ կատարէ զաւուրս իւր կրեալ ճգնութիւնս բազումս ի սուտ առաքելոց իշխանին կորստեան (Սուրմակ, Բրքիշոյ, Շմուէլ), և վախճանի խաղաղական հանգստիւ և ոչ սրով»։

**5.** Արդէն տեսանք, թէ ի՛նչպէս Արտաշէս կամ Արտաշիր, վերջին թագաւորն Արշակունի, ամբաստանուելով առ Վռամայ նախարարներէն, հարկաւ միոյ մասէն և ոչ ամենէն՝ արկաւ աթոռէն։ Թէ ի՛նչ եղաւ վախճան անկեալ թագաւորին՝ չէ յայտ. ըստ Խորենացւոյն՝ Վռամ հրամայեց «անդէն արգելուլ զնա»։ Ուստի հաւանական է թէ Արտաշէս պահուեցաւ ի Պարսկաստան, ուր և մեռաւ իսկ։ Թէ ի՛նչ եղան յետ այնորիկ Հայք՝ Խորենացին սոսկ միայն ասէ, թէ Վռամ «մեծապարգև զնախարարսն արձակեաց պարսիկ մարզպանաւ, որում անուն էր Վեհդենշապուհ»։ Եւ իսկոյն կը յարէ Սահակայ և կաթողիկոսութեան վրայ համառօտ տեղեկութիւն, այսինքն թէ ի՛նչպէս Սուրմակ, Բրքիշոյ և Շմուէլ տրուեցան հակառակաթոռ Սահակայ, որ վարեց միայն հոգևոր իշխանութիւն մինչև ի մահ իւր, զոր կը պատմէ այսպէս.—Վռամ Ե. թագաւորելով քսան և մի ամ ըստ Խորենացւոյն՝ կը մեռնի, և կը յաջորդէ Յազկերտ Բ. (440—457), այսինքն 32-դ ամէն փոքուն Թէոդոսի (408—450) մինչև Մարկիանոսի (450—457) վերջին տարին։ Յազկերտ իսկ և իսկ կը յարձակի Յունաց վրայ ի Միջագետս (Թէոդորետ. Ե. 39, Պրոկոպ. Պարս. պատմ. Ա. 2, առ Գաթըրճ.), հրամայելով երթալ ի Հայս Ատրպատականի զօրուն, որ գալով կը բանակին մօտ ի Բագաւան ուր էր Սահակ։ Սահակ հիւանդանալով կը տարուի Բլուր կոչուած գիւղն, իբրև տեղի հանգարտ յերեսաց Պարսից զօրուն։ Հոն կը վախճանի Սահակ, ըստ անուանն արդարև մեծ, յետ վարելոյ զկաթողիկոսութիւնն 51 տարի, այսինքն՝ յ3-դ ամէն Խոսրովու (388) մինչև ի սկիզբն երկրորդ ամին կամ ի վախճան առաջնոյն Յազկերտի Բ. (440)։ «Մահկանացու ծնեալ, ասէ Խորենացին, անմահ զիւրն յիշատակ եթող»։ «Զորմէ պարտ էր մեզ, կը յաւելու, հրաշափառագունիւ անցանել բանիւ ըստ արժանի հօրն դրուատից. այլ զի մի յերկարութիւն ճառիցս յեցի ձանձրութիւն ընթերցողաց՝ այլում տեղւոյ և ժամանակի զայսոսիկ թողցուք»։ Սարկաւագապետ նորա Երեմիա հանդերձ աշակերտօք նորա, և մանու-

ւանդ. նուն նորա Դուստր կամ Դստրիկ, տիկինն Մամիկոնեան, կին մեծին Վարդանայ, տանելով մարմինը կը թաղեն յիւրեանց (Մամիկոնեանց) գիւղն յԱշտիշատ.—«Զքսան և զմի ամ (ոչ այնչափ) թագաւորեալ Պարսից Վռամ երկրորդ (հինգերորդ)՝ մեռանի, թողլով զտէրութիւնն որդւոյ իւրում Յազկերտի (Բ.), որոյ մոռացեալ զհաշտութիւնն՝ իսկ և իսկ ընդ թագաւորելն դիմէ ի վերայ զօրացն Յունաց որք առ Մծբին, հրամայելով գնդին Ատրպատականի ի մեր աշխարհս եկանել. որք եկեալ անկարգապէս բանակեցան հուպ առ Բագնացն աւանի։ Յայնժամ մեծին Սահակայ հասեալ հիւանդութիւն մահու. և առեալ աշակերտացն տարան ի գիւղն որ կոչի Բլուր, որպէս լթէ ի վայր և՛ ընտանեգոյն և՛ զերծ տեղի մատուցեալ ի զօրացն Պարսից կտտողաց զնոսա։ Ուր եհաս վախճան, կեցեալ եպիսկոպոսապետութեամբ ամս յիսուն և մի, սկսեալ յերրորդ ամէ վերջնոյ Խոսրովայ Հայոց արքայի մինչև ցսկիզբն ամին երկրորդի Յազկերտի եղելոյ Պարսից թագաւորի, յելս ռմսոյն նաւասարդի, յաւուր իւրոյ ծննդեանն։... Զպատուական մարմին նորա բարձեալ սարկաւագապետին նորին Երեմիայի՝ հանդերձ աշակերտակցօք և տիկնաւն Մամիկոնենից, նորին նուաւ, որում անուն էր Դստրիկ, կին Վարդանայ սպարապետի, տարեալ հանգուցին յիւրեանց գեւղն յԱշտիշատ, որ է ի գաւառին Տարօն» (Խոր. Գ. ԿԷ.)։

6. Խորենացին կը յաւելու. «Եւ ցրուեալ աշակերտաց նորա կրօնաւորաց սպուդէից ի գաւառս իւրաքանչիւր՝ վանորայս շինեցին ժողովեալ եղբարս»։ Աստի, ինչպէս նաև նոյն դպրութեան ԽԹ. գլխէն կը տեսնուի, թէ Սահակ հաստատած էր, հաւանականապէս ի Վաղարշապատ, ըստ Յունաց Սպուդէք, այսինքն փոյթք, կամ Ակումիտք, այսինքն անքունք կամ անհանգիստք կոչուած քաղաքաբնակ միանձանց վանս, ուր վանականք ըստ կանոնի անապատական միանձանց՝ կ'ապրէին խստամբերութեամբ, կ'զբաղէին նաև ուսմանց։ Սահակ ունէր այն վանատան մէջ, որ չէր հեռի կաթողիկոսարանէն, թերևս ի կաթողիկոսարանին իսկ, իբր վաթսուն այնպիսի միանձունս ընդ իւրով առաջնորդութեամբ, յորոց և միշտ գէթ զոմանս կը շրջեցունէր ընդ իւր իբրև օգնական, թերևս կը ղրկէր զնոսա նաև ի քարոզութիւն։ Ա՛յս կարծենք կը հասկցուի յիշեալ ԽԹ. գլխէն, ուր Խորենացին յետ պատմելոյ զընտրութիւն Սահակայ ի կաթողիկոսութիւն՝ անդէն կը յարէ ի գովեստ Սահակայ. «Սա ամենայն առաքինութեանց հարցն նմանեալ, աղօթիցն մասամբ առաւելեալ։ Քանզի ստացաւ աշակերտս վաթսուն ըստ նմանութեան մայրաքաղաքացն սպուդէից, որք կրօնաւորք, խարազնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, որ յար ընդ

նմա շրջէին»։ Ուստի Սահակ, թէև ամուսնացեալ, տէր ընտանեաց, միանգամայն բեռնաւորեալ ծանր հոգովք կաթողիկոսութեան՝ կը վարէր իւր վանականաց հետ ճշմարիտ միանձնական կեանս, միացունելով տեսականն ընդ գործնականին։ Զայս կը նշանակէ ապաքէն ասելն Խորենացւոյն, թէ «Որովք մշտնջենաւոր պաշտամամբ կատարէր զկանոնն որպէս զայն որ յանապատսն էին, և հոգայր զաշխարհս որպէս զայն որ յաշխարհի են»։ Եթէ խստամբերութիւնն, գովելի ըստ ոգւոյ ժամանակին, զարմանալի է յանձին Սահակայ, որ զկնի թագաւորին կը վարէր առաջին պաշտօնը, և ներելի էր նմա ճաշել թագաւորաբար և զգենուլ կնգմենիս և սամուրենիս, ինչպէս Զաւէնն և Շահակ՝ ևս առաւել գովութեան և զարմանաց արժանի է մեծ հմտութիւն նորա, զոր Փարպեցին այնպէս գրուատելով կը յիշէ, մինչև վերագոյն դնել զնա քան զՄեսրոպ, որ, ասէ, յօրինեց հայերէն այբուբենն՝ «ուսանելով ի սուրբ կաթողիկոսէն Սահակայ... որ յոյժ առլցեալ անյագուցանէր վարժիւք զբազում գիտնովք Յունաց»։ Նոյնպէս թարգմանութեան համար ասէ, թէ «Երանելին Մաշթոց և որ ընդ նմա պատուական քահանայք էին՝ ոչ զօրէին համարձակել յայսպիսի սաստիկ և կարևոր գործ, թարգմանել գիրս ի յոյն լեզուոյն ի հայ բարբառ. վասն զի ոչինչ էին այնպէս տեղեակ գիտնապէս հրահանգի յունարէն ուսման»։ Որչափ և աւելի համարինք զգովեստ Փարպեցւոյն՝ նշանագրաց գիւտին և թարգմանութեան գործք, յորս ոչ ձեռնտու միայն, այլ և գլուխ և առաջնորդ էր Սահակ՝ բաւական են ցուցնել նորա մեծ հմտութիւնն ոչ միայն յունարէնի ուսման, այլև ասորւոյն, հաւանականապէս նաև պարսկին, թողումք ասել նաև հայոյն։ Զմահն և զթաղումն Սահակայ կը պատմէ նաև աշակերտ նորա Կորիւն իւր զարդարուն ոճով այսպէս. «Յետ այնորիկ դէպ լինէր երանելոյն Սահակայ լցեալ աւուրբք երկայն ժամանակօք, և վայելչացեալ աստուածաբեր պտղոցն բարութեամբք. յառաջնում ամի Յազկերտի որդւոյ Վռամայ՝ թագաւորի կացելոյ ի Պարսից աշխարհին, ի Բագրաւանդ գաւառի, ի գիւղ Բլրոցաց, ի կատարել ամսեանն Նաւասարդի, որպէս և զօր ծննդեան երանելոյն յիշէին, յերկրորդ ժամու աւուրն, ի պաշտաման անուշահոտ իւղոյն, հանդերձ աստուածահաճոյ աղօթիւք՝ ծերունւոյն ի Քրիստոս աւանդեալ, հայեցեալ ի մարգարէին որ ասէր. Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ, և Ստեփանոսի երանելոյ որ ասէր. Տէր Յիսուս, ընկալ զհոգի իմ։ Ըստ նմին օրինակի և նորա ապաւինեալ զանձն և զմնացեալս ամենապահ շնորհացն Աստուծոյ։ Զոր և առեալ վաղվաղակի ձեռնասուն աստուածասէր պաշտօնէիցն իւրոց, որոյ Գըլ-

խաւորին Երեմիա անուն ճանաչէր, այր սուրբ և բարեպաշտօն, Հանդերձ աստուածասէր իշխանկնաւ միով որ անուանեալ կոչէր Դուստր, որ էր կին Վարդանայ զօր ի վերոյն յիշեցաք, և բազում ամբոխից սրբոց ժողովոց, բարձեալ զսուրբն սաղմոսիւք և օրՀնութեամբ և Հոգևոր բարբառով, յետ սակաւ ինչ աւուրց ընդ տիւ և ընդ գիշեր ի Տարօն Հասուցանէին մինչ ի բուն իսկ գիւղն յԱշտիշատ։ Եւ անդ ի մարտիրոսական խորանին յարկեղ սրբոցն, Հանդերձ ամենայն անուշաՀոտ խնկօք եդեալ և՛ կնքեալ քրիստոսադրոշմ կնքովն, և զօրինաւոր յիշատակն ի վերայ կատարեալ՝ այնուՀետև ուրաքանչիւրն դառնային» (Կորիւն)։ «Որոց և նոյնպէս ամի ամի գումարելովք ի նոյն ամսեան՝ զնոյն յիշատակն տօնախմբեն» (Անդ)։

**7.** Բաւական Համարելով այսչափ զՍաՀակայ՝ գանք Նշանագրոց գիւտին և Թարգմանութեան գործին, որ է մին ի Նշանաւորագոյն անցից պատմութեան ժամանակին և ազգին միանգամայն։ Բայց որովՀետև այս գործը կապուած է սերտիւ ընդ պատմութեան Մեսրոպայ՝ Հարկ է յետ ՍաՀակայ խօսել և զմանէ։ Ունինք Մեսրոպայ վարուց պատմութիւն մի, գրեալ, որպէս ասի ի յառաջաբանին՝ ի խնդրոյ ուրումն Յովսեփայ, աշակերտի Մեսրոպայ։ Գրուածն է արդարև մթին. յայտնի է սակայն լեզուէն, թէ է գործ առաջնոյ կիսուն Ե. դարուն, ուստի և գրողն էր ժամանակակից, և չէ անՀաւանական, թէ ըստ աւանդութեանն՝ է աշխատութիւն Կորեան, միոյ յաշակերտաց Մեսրոպայ։ Զայս կը Հաստատէ բուն իսկ մատեանն, ուր պատմիչն ի յիշելն զերթն Թարգմանչաց ի Կոստանդնուպոլիս՝ ասէ. «Յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ոմանց եղբարց ի Հայաստան աշխարՀէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որ և Ղևոնդէս առաջնոյն անուն էր, և երկրորդին՝ Կորիւնս»։ ԶՄեսրոպայ կը խօսի նաև Խորենացին։ Մենք կ՚առնունք ի Կորենէ, իբրև ժամանակակցէ և մերձաւորէ Մեսրոպայ, յիշելով նաև զպատմութիւն Խորենացւոյն, մանաւանդ ուր սա կը տարբերի յառաջնոյն, կամ կը պատմէ աւելի ինչ քան զնա։

Մեսրոպ, որ և Մաշթոց, կրկին անուանք ցայժմ անծանօթք, այժմ կը թուին ըստ բաւականին ծանուցեալ. առաջինն՝ պարսիկ բառէն միւշրիֆ, որ կը նշանակէ դպիր կամ քարտուղար, և երկրորդն՝ յոյն բառէն μάστος, որ նշանակէ *բարձրութիւն*, իբրև եկեղեցական տիտղոս, ինչպէս *եկղեսիաստիկոսն* (Խոր. Գ. Ծէ.) և *ակումիտ* (Կորիւն), որ այլով առթիւ տրուեցան նմա։ Կորիւն կը կոչէ զնա ՚ամակ այս եկեղեցական անուամբ *Մաշթոց*. Մեսրոպ՝ ոչ ուրեք. մինչ Խորենացին կը վարէ Համակ զանունն Մեսրոպ, միան-

գամ միայն Մաշտոց, որում կը կցէ վարդապետ բառը—«Զորս ետ թարգմանել երանելի վարդապետն Մաշտոց ի հայ լեզու» (Խոր. Բ. Ժ.). Այս Մեսրոպ կամ Մաշթոց է, որ խորհրդակցութեամբ թերևս և գործակցութեամբ Սահակայ, ի քաջալերելոյ ևս Վռամշապհոյ թագաւորին, ինչպէս կ'ըսուի՝ գտաւ մեր այժմու նշանագիրները։ Կորիւն նշանագրաց գիւտին, ինչպէս նաև թարգմանութեան պատմութիւնը կը պատմէ խառն ընդ պատմութեան վարուցն Մեսրոպայ այսպիսի կարգաւ։ Մեսրոպ, ծնեալ յամին իբր 361, էր Տարօնոյ Հացեկաց գիւղէն, որդի ուրումն Վարդանայ, ի մանկութեան ուսեալ յունարէն. գալով ապա յԱյրարատ՝ կը մտնէ ի ծառայութիւն արքունեաց, հաւանականապէս ի սկզբան թագաւորութեանն Վռամշապհոյ (392), և ապա հրաժարելով կը մտնէ ի կարգ եկեղեցական, և ընտրելով վանականութեան կեանք՝ կ'առանայ աշակերտներ, ընդ որս կ'երթայ ի գաւառն Գողթան (395), ուր կային տակաւին հին կռապաշտութեան մնացորդք, զոր կը ջնջէ երևելի նշանօք, ինչպէս եղած էր, ասէ Կորիւն, առ Լուսաւորչաւ։ Անտի ապա կ'երթայ ի կողմանս Մարաց, այն է Ատրպատականի կամ Հայոց արևելեան հարաւային մասը, որ այսպէս կը կոչուէր։ Յետոյ տեսնելով ազգին կարօտութիւնն ուսման և հոգեւոր դաստիարակութեան, որմէ Հայք, թէպէտ քրիստոնեայ, մնացած էին զուրկ առ ի չգոյէ դպրութեան՝ կը հնարէ հայերէն գիրն (398—405), ստէպ աշխատութեամբ և ճանապարհորդութեամբք ի Միջագետս և յԱսորիս. կը հաստատէ դպրոցներ յուսումն հայերէն դպրութեան, և լինի գործակից թարգմանութեան հին և նոր Կտակարանաց ի հայ լեզու։ Յետ այս մեծ և ծանր աշխատութեան կ'սկսի Մեսրոպ իւր առաքելական առաջին շրջանն ի գաւառս ինչ Հայոց։ Նախ առնէ միւսանգամ այցելութիւն Գողթան, որ նորա սիրելի գաւառն էր. անտի կ'երթայ ի Սիւնիս, անտի ի Վիրս, ապա հանդերձ Սահակաւ ի Հայս բաժնին Յունաց, ուր, ինչպէս տեսանք, մեծ դժուարութեանց հանդիպելով Յունաց երեսէն՝ կը ղրկուի ի Կոստանդնուպոլիս (420)՝ առնուլ հրաման վարդապետել այն մասին հայ ժողովուրդը։ Հոն հանդիպելով բանիբուն ազուան երիցու Բենիամին անուն՝ կը թելադրէ նմա յօրինել Աղուանից լեզուին նշանագիր։ Յետ այսր ամենայնի գալով ի բաժինն Պարսից առ Սահակ և առ թագաւորն Հայոց Արտաշիր (425)՝ կ'սկսի իւր երկրորդ առաքելական շրջանն նախ յԱղուանս, անտի ի Ձորն Գարդմանայ, ապա ի բուն Վիրս, անտի ի գաւառն Տաշրայ, այսինքն ի հայ Վիրս, որ առաջ կը կոչուէր Գուգարք, մեծ պատուով ընդունուելով այս ամէն երկիրներուն իշխաններէն իբրև

արդարև լուսաւորիչ։ Ի վախճանի գալով ի Հայս առ Սահակ (428)՝ կ'սկսի նովաւ հանդերձ գրել և թարգմանել։ Յետ ամաց ինչ (430 կամ 31) կը ղրկուին թարգմանիչք, այսինքն Յովհան, Եզնիկ, ուրիշ երեք կամ չորս ընկերներով յԵդեսիա և ի Կոստանդնուպոլիս թարգմանել զգիրս յոյն և ասորի հարց, և յետ իբր չորս կամ հինգ ամաց (435 կամ 436) կը դառնան օրինակօք Ս. Գրոց, որովք կ'ուղղուի առաջին թարգմանութիւնն, որ աճապարանօք եղած էր։ Իբր չորս կամ հինգ ամօք յետոյ (440), Սահակայ մահուան տարին, կը վախճանի Մեսրոպ, յետ բանիւ և արդեամբ և գրով ևս աշխատելոյ յօգուտ ազգին։ Այս է պատմութիւն Կորեան, զոր աւասիկ քաղելով կը դնենք.—

«Առն. վասն որոյ փոյթ արարեալ (է) մեր պատմելոյ՝ էր Մաշթոց անուն ի Տարօնական գաւառէն, ի Հացեկաց գեղջէ. (և էր սա) որդի առն երևելւոյ Վարդան անուն կոչեցելոյ։ Ի մանկութեան տիսն վարժեալ հելլենական դպրութեամբ,—(ըստ Խորենացւոյն՝ «ուսեալ և ուսեալ առ մեծին Ներսիսի»)—եկեալ հասանէր ի գաւառն Արշակունեաց թագաւորաց Հայոց մեծաց, կացեալ յարքունական դիւանին լինել սպասաւոր արքայական հրամանին—(ըստ Խորենացւոյն՝ «յետ ելից Ներսիսի յաշխարհէ՝ ի դրան արքունի կարգեալ քարտուղար»)—տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստիւն իւրոց զօրականացն։... Յետ այնորիկ ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ՝ մերկանայր այնուհետև զիշխանակիր ցանկութիւնսն, անդէն վաղվաղակի ի միայնակեցական կարգ մտանէր. բազում և ազգի ազգի վշտակեցութիւն ըստ Աւետարանին կրէր. ամենայն կըրթութեամբ հոգևորացն զանձն տուեալ մենաւորութեամբ, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակութեանց, արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոյ, և բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն և զհարկ քնոյ յատնաւոր տքնութեանն ի թօթափել ական վճարէր։—(Խորենացին համառօտիւ «Սիրեաց, ասէ, զմենակեցութեան վարս»)։—Եւ գտեալ ևս զոմանս յինքն յարեցուցանէր. (զորս) առեալ այնուհետև դիմեալ իջանէր յանկարգ և յանդարման տեղիս Գողթան։ Այլ և ընդառաջ ելանէր նմա աստուածասէր իշխանն Գողթան, այր երկիւղած։... Իսկ երանելւոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն ի մէջ առեալ՝ ձեռն արկանէր զգաւառովն հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին, գերեալ զամենեսեան ի հայրենեաց աւանդելոց և ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէ ի հնազանդութիւն Քրիստոսի մատուցանէր։ Եւ յորժամ ի նոսա զբանն

կենաց սերմանէր՝ յայտնի իսկ բնակչաց գաւառին նշանք մեծամեծք երևէին, կերպակերպ նմանութիւն դիւացն փախստական լինելով անկանէին ի կողմանս Մարաց»։—(Նոյնպէս Խորենացին. բայց աւելի պարզ.—«Երթեալ ի գաւառն Գողթան բնակէ. և որ ի նմա զօղեալ աղանդն հեթանոսական, թագուցեալ յաւուրցն Տրդատայ մինչև ցայն ժամանակս, և ապա յայտնեցաւ ի վառթարել թագաւորութեանն Արշակունեաց՝ զայն եբարձ օգնականութեամբ իշխանի գաւառին որում անուն էր Շաբիթ։ Ուր նշանք աստուածայինք լինէին որպէս առ սրբովն Գրիգորիւ. հալածական լեալ դևք մարմնաւոր տեսլեամբ անկանէին ի կողմանս Մարաց»)։—Հոս կը դնէ Կորիւն նշանագրաց գիւտին պատմութիւնը, զորմէ մեք պիտի խօսինք ուրոյն։ Ապա յառաջ տանելով պատմութիւնը՝ «Յայնժամ վաղվաղակի, ասէ, հրաման առնոյր ի թագաւորէն (աւետարանել) գխուժադուժ կողմանսն Մարաց (այսպէս կը կոչուէր հարաւային արևելեան մասն մեծին Հայոց, սահմանակից Սիւնեաց), որք ոչ միայն վասն դիւական սատանայակիր բարուցն ճիւաղութեան, այլև վասն խեցբեկագոյն և խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին... առեալ (զնոսա) պարզախօսս հռետորաբանս, կրթեալս, աստուածատուր իմաստութեանն ծնունդս կացուցանէր։... Յետ այնորիկ առնոյր հաւանութիւն երանելին Մաշթոց, որպէս զի տէր եպիսկոպոսն ի կայենականսն և նա ի սփիւռս հեթանոսաց (այսինքն Սահակ բուն Հայոց մէջ, և ինքն Մեսրոպ շրջակայ գաւառներն) զբանն կենաց սերմանիցեն։ Եւ հրաժարեալ ի նոցանէ հանդերձ այլովք ևս օգնականօքն... սպասաւորօք Աւետարանին... երթեալ իջանէր առ ոտս տանն Գողթան, յառաջին դաստակերտն իւր, և անդ ընտելական սովորութեամբն ի կիր արկեալ զվարդապետութիւնն հաւատարութեամբն բարեպաշտին Շաբաթայ՝ լի առնէր զգաւառն ողջունիւ Աւետարանին Քրիստոսի, և կարգէր յամենայն գիւղս գաւառին դասս սրբոց վանականաց։ Որում և հասեալ ժամանեալ (յաջորդեալ) հայրաբարուին Գտայ, որդւոյ Շաբաթայ՝ բազում սպասաւորութիւն իբրև հաւասարի որդւոյ վարդապետին տանէր։—(Խորենացին ևս գիտէ Մեսրոպայ այս երկրորդ երթն ի Գողթն, բայց կը դնէ յետ դարձին ի բաժնէն Յունաց—«Ինքն եկեալ յԱյրարատ՝ անցանէ յառաջնոյ բնակութեան գաւառն Գողթն, բնաբարձ առնէ (զմնացորդս) հեթանոսական աղանդոյն հանդերձ օգնականութեամբ հօրաբարոյին Գտայ, որդւոյ Շաբիթայ, իշխանի գաւառին»)։—«Ապա յետ այնորիկ ի սահմանակիցն, ի Սիւնական գաւառն ելանէր, և անդ աստուածասէր հնազանդութեամբ ընդունէր զնա իշխանն Սիւնեաց որ էր Վաղինակ անուն։ (Այս Վաղինակ էր հօրեղբայր Վասակայ, և Վա-

սակ, ըստ պատմութեանն Եղիշէի, որպէս թէ «ննենգութեամբ և քսութեամբ» տալով սպանանել զնա՝ առաւ իշխանութիւնը։

Ը. Զարմանալի է սակայն, թէ ինչպէս Կորիւն, որ քան զհեղինակն պատմութեան Եղիշէի, ո՛ ոք և է, առաւել հմուտ էր պատմութեանն Վասակայ իբրև աշակերտ Մեսրոպայ, նաև եպիսկոպոս այն կողմանց, կրնար ըսել սպանողի մը համար, թէ «Պարգևեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց, այր խորհրդական և հանճարեղ», ա. հ., մանաւանդ որ Կորիւն գրած է իւր պատմութիւնն զկնի պատերազմին Վարդանանց, քանզի գիտէ քահանայից հալածումն ի Տիզբոն, և զմահն Վահանայ Ամատունւոյ որ էր աքսորեալ նախարարներէն, դարձելոց առ Պերոզիւ)։ «Եւ ժողովէր մանկունս առ ի նիւթ վարդապետութեան, առաւել զգազանամիտ զվայրենագոյն զճիւաղաբարոյ կողմանցն (Սիւնեաց արևելեան մասին բնակիչք էին արդարև բարբարոս). և այնչափ փոյթ ի վերայ ունելով դայեկաբար սնուցանէր և խրատէր՝ մինչև ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոսս տեսուչս եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անունն կոչէր Անանիաս, այր սուրբ և երևելի հայրաբարոյ ժառանգաւորաց եկեղեցւոյ. ապա և զերկիրն Սիւնեաց դասուք վանականաց լնոյր»։—(Խորենացին դարձեալ համառօտիւ կ'անցնի—«Եւ ոչինչ յայնցանէ (զորս արարն ի Գողթան), ասէ, պակաս արարեալ գտանի և Սիւնեաց աշխարհին, օգնականութեամբ նորին իշխանին որ կոչէր Վաղինակ»)։—Զարմանալի է Կորեան մեծ գովութեամբ յիշելն հոս զՎասակ.—«Յորում ժամանակի (իմա յետ մահուն Վաղինակայ) պարգևեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց քաջն Սիսականն Վասակ, այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց, շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ։ Բազում ինչ նպաստութիւն ցուցանէր աւետարանագործ վարդապետութեանն, իբրև որդւոյ առ հայր հպատակութիւն ցուցեալ և ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեան. մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր։

Թ. «Յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ գոգ ի մտի արկանէր սիրելին Քրիստոսի և վասն բարբարոսական կողմանն. առնոյր կարգէր նշանագիրս վրացերէն լեզուին ըստ շնորհեցելոյ նմա ի Տեառնէ։ Գրէր կարգէր և յօրինեալ յարդարէր, և առնոյր ընդ իւր զոմանս յաւագոյնս յաշակերտացն իւրոց, յարուցեալ գնայր էջանել ի կողմանս Վրաց, և երթեալ յանդիման լինէր թագաւորին, որում անուն էր Բակուր, և եպիսկոպոսի աշխարհին Մովսէս։... Եւ զիւր արուեստն առաջի արկեալ խրատէր։... Եւ գտեալ զայր մի

թարգման վրացերէն լեզուին որ անուանեալ կոչէր Ջաղայ, այր գրագէտ և ճշմարտահաւատ՝ հրաման տայր արքային Վրաց ի կողմանց կողմանց և ի խառնիճաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս, տալ ի ձեռն վարդապետին։ Զոր առեալ արկանէր ի բովս վարդապետութեանն, և հոգևոր սիրոյն եռանդմամբ զաղտ և զժանգ շարաւահոտ դիւացն՝ և զսնոտիագործ պաշտամանն ի բաց անջատեալ անյիշատակ ցուցանէր։... Զնոսա որ յայնչափ ի մասնաւորս և ի բաժանեալ լեզուացն ժողովեցան՝ միով աստուածաբարբառ պատգամօքն մի ազգ կապեալ փառաբանիչս միոյ Աստուծոյ յօրինէր. յորոց և իմ անարժանիս եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ. որոց առաջինն Սամուէլ անուն, այր սուրբ և բարեպաշտօն՝ եպիսկոպոս կացեալ տանն արքունականին»։ -(Զայս կը կրկնէ համառօտիւ և Խորենացին. «Իսկ Մեսրոպայ երթեալ յաշխարհն Վրաց՝ առնէ և նոցա նշանագիրս տուեցելովն ի վերուստ շնորհաւն, հանդերձ Ջաղայիւ ումեմն թարգմանաւ հելլէն և հայ լեզուի, ձեռնտու լինելոյ արքայի նոցա Բակրոյ, և եպիսկոպոսին Մովսէսի։ Եւ ընտրեալ մանկունս և յերկուս բաժանեալ դասս՝ վարդապետս թողու նոցա յաշակերտաց իւրոց»)։—Հոս Կորիւն յետ պատմելոյ զերթալն Մեսրոպայ ի Կոստանդնուպոլիս Յունաց բաժնին Հայոց համար, և ինչ որ եղաւ այն բաժնին մէջ յետ դարձին նորա ի Կոստանդնուպոլսոյ, ինչպէս պատմեցինք այլուր՝ յառաջ կը տանի զպատմութիւնն այսպէս. «Յայնմ ժամանակի—այսինքն մինչդեռ էր ի բաժնին Յունաց—եկեալ դիպէր նմա այր մի երէց աղուան ազգաւ, Բենիամին անուն. և նորա (Մեսրոպայ) հարցեալ և քննեալ զբարբարոս զբանս աղուաներէն լեզուին՝ առնէր ապա նշանագիրս ըստ վերնապարգև կորովի սովորութեան իւրում։... Յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց և յիշխանաց աշխարհին և յամենայն եկեղեցեաց, թողեալ վերակացուս հաւատացելոցն զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն, որոց առաջնոյն Ենովք անուն էր, և երկրորդին Դանան, արք կրօնաւորք և յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեանն... ինքն գայր անցանէր ի կողմանս Հայոց մեծաց. և հասեալ ի նոր քաղաքն յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, և թագաւորին Հայոց որում անուն Արտաշէս կոչէին և ամենայն բանակին... Եւ ապա հրաժարեալ գնայր ի կողմանս Աղուանից, և հասեալ ի թագաւորական տեղին՝ տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից որում անուն Երեմիա կոչէին, և զնոցին թագաւոր որում Արսվաղ էր անուն... (որք և) տային հրաման ի գաւառաց և ի տեղեաց իշխանութեան իւրեանց բազմութիւն մանկանց յարուեստ դպրութեան ածել, և գումարել ըստ արժանաւոր

և պատեհ տեղեաց դասս դպրոցաց և ոճիկս կարգել ի դարմանս։ Ապա այնուհետև երանելոյն Երեմիայի եպիսկոպոսի ի ձեռն առեալ վաղվաղակի զաստուածեղէն գրոց թարգմանութիւնս ի գործ արկանէր, որով անդէն յական թօթափել վայրենամիտ և դատարկասուն և անասնաբարոյ աշխարհն Աղուանից մարգարէագէտք և առաքելածանօթք և աւետարանաժառանգք լինէին. և ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք։ Դարձեալ առաւել ևս երկիւղածն յԱստուծոյ արքայն Աղուանից միամիտ փութով հրաման տայր սատանայակիր և դիւամոլ ազգին սաստիւ՝ թափել զերծանել յունայնավար հնոցելոցն, և հնազանդ լինել ամենահեշտ լծոյն Քրիստոսի։ Զայս արարեալ հաւասարութեամբ և լցեալ զպիտոյն իւրեանց, ձեռնտու ևս եղեալ նմա ի Բաղասական կողմանս (մին ի գաւառաց Աղուանից) սրբոյ եպիսկոպոսին, որում Մուշեղ կոչէին՝ հրաժարէր ապա ի թագաւորէն և յեպիսկոպոսացն և յամենայն եկեղեցւոյն Աղուանից։ Եւ զոմանս յիւրոց աշակերտացն վերակացուս կացուցանէր հանդերձ արամբ քահանայիւ արքունական դրանն, որում անուն Յովնաթան կոչէին, և յանձն առնելով զնոսա և զանձն ամենապահ շնորհացն Աստուծոյ՝ խաղացեալ գայր ի կողմանցն Աղուանից, անցանել յաշխարհն Վրաց, և հանդէպ հասեալ գայր Գարդմանական ձորոյն (գաւառ ի մէջ Աղուանից և Վրաց)։ Ընդ առաջ լինէր նմա իշխանն Գարդմանից, որում Խուրս կոչէին, և ապրնջական եղեալ նմա աստուածասէր երկիւղածութեամբ՝ առաջի դնէր զանձն վարդապետին հանդերձ իշխանութեամբն իւրով, առաւելագոյն իսկ վայելեալ ի հիւթ և ի պարարտութիւն վարդապետութեանն՝ յուղարկէր զերանելին ուր և երթալոցն էր։ Իսկ նորա անցեալ դիմեալ ի կողմանսն (բուն Վրաց), առ որով ժամանակաւ Արձիւղ անուն թագաւորէր Վրաց, պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնն։ Յայնժամ իշխանին Տաշրացւոց (հին անուամբ՝ Գուգարաց) առն պատուականի և աստուածասիրի որ անուանեալ կոչէր Աշուշայ՝ (ընկալեալ զնա) ի ձեռն տայր նմա զանձն ամենայն գաւառովն իւրով. և նորա ամենասփիւռ վարդապետութիւնն ոչինչ պակասութեամբ քան զայլոցն գաւառաց անցուցեալ, և յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուելի, զոյն զոր ի վերոյ նշանակեցաք՝ ինքն դառնայր ի կողմանս Հայոց մեծաց. և եկեալ ի սովորական տեղիսն զընտելական ողջոյնն սրբոյն Սահակայ և ամենայն պատահելոցն տուեալ՝ պատմէր նոցա վասն ամենայն նորագործ իրացն»։—(Համաձայն Կորեան կը պատմէ և Խորենացին, թէպէտ ոչ կարգաւ, այլ այլևայլ առթիւ մասն մասն, սակայն Կորեան կարգն հաւանական կը թուի մեզ։ Արդ՝ ըստ Խորենացւոյն ևս

«Թողեալ Մեսրոպայ վերակացուս յիւրոց աշակերտելոցն ի նմին տեղւոջ (ի բաժնին Յունաց), զՂեւոնդ և զԷնովք ի Սպեր, իսկ ի Դերջան զնոցին եպիսկոպոսն զԳնիթ, և յԵկեղեաց զԴանան՝ ինքն գայ յԱյրարատ: (Ապա) յԱղուանս իջեալ առ Արսվաղէն թագաւոր նոցա և առ եպիսկոպոսապետն Երեմիա. որոց կամաւ յանձն առեալ զվարդապետութիւն նորա՝ ետուն մանկունս ընտիրս: Եւ կոչեցեալ զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման, զոր անդանդաղ արձակեաց մանուկն Վասակ, Սիւնեաց տէր, ի ձեռն Անանիայի եպիսկոպոսի իւրոյ. որովք ստեղծ զնշանագիրս կոկորդախօս աղխազուր խժական խեցբեկագունին այնորիկ Գարգարացւոց (Հայ Աղուանից) լեզուին, վերակացու թողեալ զաշակերտ իւր զՅովնաթան, միանգամայն և քահանայս կացուցեալ դրանն արքունի:... Տեղեկացեալ ևս, եթէ չարեաց վարդապետացն (Հեթանոսական աղանդոյն) նախագոյնք են Բաղասականն են կողմանս՝ երթեալ զբազումս յուղղութիւն ածէ, և զսակաւս անդարձս յիշխանութիւն Հոնաց հալածականս առնէ. Հաւատալով զվարդապետութիւն կողմանցն այնոցիկ եպիսկոպոսի որում Մուշէն կոչէին՝ ինքն դառնայ զԳարդմանայ ձորովն, զի և ի նմա լուաւ լինել յընկերաց նոցին աղանդոյն: Զորս գտեալ ածէ և զնոսա ի գիտութիւն ճշմարտութեան, հանդերձ վերստին ուղղութեամբ իշխանին Գարդմանայ որում անուն էր Խուրս: Հրաւիրի անդէն ի բդեշխէն Գուգարացւոց Աշուշայէ յաղագս նորին գործոյ գալ յիւր իշխանութիւնն ի գաւառն Տաշրայ, ուր երթեալ լաւագոյնս վարդապետեաց և հաստատագոյնս քան զամենայն աշակերտեալսն. առ որով ժամանակաւ Արձիլ ոմն էր կացեալ թագաւոր Վրաց»):—«Յետ այնորիկ (իմա յետ դարձին Մեսրոպայ ի քարոզութենէն առ մեծն Սահակ) ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւն առաւել յարգել և դիւրացուցանել՝ ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել, և ի գրել մեծն Սահակ ըստ յառաջագոյն սովորութեանն: Կորիւն յետ յիշելոյ զառաքումն թարգմանչաց, և այլ ինչ ինչ զթարգմանութենէ Գրոյն՝ կը յաւելու. «Եւ այնպէս զամենայն ժամանակս իւրեանց յընթերցուածս գրոց ծախէին հարքն զտիւ և զգիշեր, և նովիմբ և ծաղկեալք և շահաւետեալք՝ օրինակ բարեաց ուսումնասէր առընթերակայից լինէին:... Առաւել և բարձրագոյն վարդապետութեամբն սկսեալ երանելոյն Մաշթոցի ճառս յաճախագոյնս, դիւրապատումս, շնորհագիրս, բազմադիմիս ի լուսաւորութենէ և ի հիւթոյ գրոց մարգարէականաց կարգեալ յօրինէր, լի ամենայն ճաշակօք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան: Յորս բազում նմանութիւնս և օրինակս ի յանցաւորացս աստի, առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ

ի հանդերձեալսն յերիւրեալ կազմէր, զի հեշտընկալք և դիւրահասոյցք տխմարագունիցն և մարմնական իրօք զբաղելոցն լինիցին։... Եւ դարձեալ—(որ մեծագոյն գովեստն է ժամանակին)—բազում և անհամար գունդս վանականաց ի շէնս և յանշէնս, դաշտականս և լեռնականս, անձաւամուտս և արգելականս բնակեցուցեալ հաստատէր։ Զորս ընդ ժամանակս ժամանակս... առեալ յիւրաքանչիւր մենաստանացն և երթեալ լեռնակեաց սորամուտ ծակախիթ լեալ՝ զառօրէական զկերակուրն խոտաբուտ ճաշակօքն վճարէին»։ Ապա յետ պատմելոյ զմահն Սահակայ, ինչպէս արդէն յիշեցինք՝ կը դնէ Մեսրոպայ մահուան պատմութիւնը, որով կը կնքէ իւր սքանչելի մատենիկն.— «Իսկ երանելի զուգականին, զՄաշթոցէ ասեմ, լուեալ զմահ նորա (Սահակայ)՝ բազում անձկայրեաց տրտմութեամբ և արտօսրագութ ողբովք և ծանրաթախիծ սգովք պաշարեալ դնէր։... Բայց թէպէտև միայնաւորութեանն տրտմութիւն չթողոյր զուարթանալ՝ սակայն զաւետարանական ընթացսն և զվերակացութիւնն սրբոյ եկեղեցւոյ շնորհօքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր, և առաւել փութայր, գուն եդեալ զամենեսեան յորդորելով առ բարեացն քաջութիւն։ Եւ զպայգ և զցերեկ պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք և բարձրագոյն բարբառովք, աստուածագիր պատուիրանացն հրամանս ուշ առնելով զգուշացուցանէր զամենայն մարդ. մանաւանդ զի և զմտաւ իսկ ածէր զօր վախճանին. չտայր քուն աչաց և ոչ նիրհ արտևանանց, մինչև հասանել ի հանգիստն Տեառն։

**10.** «Եւ մինչդեռ այնպէս մերձաւորացն առ իւրև զհոգևոր եռանդն ածէր, և բազում թուղթս խրատագիրս և զգացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր՝ անդէն ի նմին ամի, յետ ամսոց վեցից անցելոց վախճանի երանելոյն Սահակայ՝ լինէր հանդերձ սըրբով վարդապետով բանակն Հայոց յԱյրարատեան ի Նոր քաղաք, և նովին հոգեկրօն վարուք հասանէր սրբոյն քրիստոսակոչ կատարումն, յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեանն, յերեքտասաներորդում ամսեանն Մեհեկանի։ Եւ յորժամ որոշել ի միջոյ ձեռնասուն աշակերտաց և խառնել ի գունդն Քրիստոսի հասանէր՝ թեթևացեալ և սթափեալ ի ցաւոցն կանգնեալ նստաւ ի ժողովոյն միջի, և համբարձեալ զձեռսն հանապազատարածս յերկինս՝ զամէն մնացեալսն յանձն առնէր շնորհացն Աստուծոյ, վասն նոցա օգնականութիւն հայցէր։ Եւ անուանք գլխաւորաց աշակերտացն ժողովելոց են այս. առաջնում Յովսէփ, զոր և ի սկզբան գրեցաք, երկրորդին Թադիկ, արք զգաստք, զգուշագոյնք հրամանաց վարդապետութեանն։ Ի զինուորական կողմանէն՝ առաջնումն Վահան ա-

նուն յազգէն Ամատունեաց, որ էր հազարապետ Հայոց մեծաց, և երկրորդին՝ Հմայեակ ի Մամիկոնեան տոհմէն, արք պատուականք, երկիւղածք, հրամանակատարք վարդապետական հրամանաց։ Եւ մինչդեռ ձեռք սրբոյն ընդ երկինս կարկառեալ էին՝ տեսիլ սքանչելի խաչանման լուսաւոր շողաւոր երևէր ի վերայ ապարանիցն, յորում երանելին վախճանէր, զոր ամենայն ուրուք ինքնատես եղեալ և ոչ առ յընկերէ պատմեալ»։ Արդարև, ըստ սկզբանց ժամանակին՝ չէր արժան այնպիսի սրբոյ մահը թողուլ անցանել առանց երևելի նշանաց։ «Զսէր և զմիաբանութիւն աւանդեալ, զմեր ձաւորս և զհեռաւորս օրհնութեամբ պսակեալ և զհաճոյական աղօթս հաստուցեալ ի Քրիստոս՝ հանգեաւ։ Զոր առեալ Վահանայ և Հմայեկի կազմութեամբ վախճանելոյ, հանդերձ աշխարհական ամբոխիւ, սաղմոսիւք և օրհնութեամբ և հոգևոր ցնծութեամբք, կանթեղօք վառելովք և ջահիւք բորբոքելովք և ամենայն լուսաճաճանչ գնդիւն, և այնու խաչանշան լուսաւոր առաջախաղաց նշանաւն՝ յՕշականն ելանէին, և անդ ի մարտիրոսարանն մատուցեալ, զօրինաւոր յիշատակն կատարեալ՝ ապա նշանն աներևոյթ լինէր, և նոքա իւրաքանչիւր դառնային»։ Այսպէս կը պատմէ և Խորենացին, առանց թողլոյ յիշել նաև խաչանման լուսաւոր տեսիլը, յաւելլով և փառաւոր գովեստ զերանելւոյն.—«Զկնի վեց ամսոց անցելոց (ի վերայ վախճանին Սահակայ), յերեքտասանն Մեհեկանի, երանելին Մեսրոպ փոխեցաւ յաշխարհէ ի Վաղարշապատ քաղաքի. գերազանցեալ քան զամենայն որք զայնու ժամանակաւ էին առաքինիք։ Քանզի ամբարտաւանութիւն և մարդահաճութիւն ի նորա վարս տեղի գտանել երբէք ոչ կարացին. այլ հեզ և լաւակամ և բարեխորհուրդ գոլով, և երկնայնոցն զարդարեալ սովորութեամբք զինքն բոլորից ցուցանէր։ Վասն զի գոյր տեսլեամբ հրեշտակական, մտօք ծննդական, բանիւք պայծառ, գործովք ժուժկալ, մարմնով արտափայլեալ, սարասիւք անճառ, խորհրդակցութեամբ մեծ, հաւատով ուղիղ, յուսով համբերող, սիրով անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ։ Այլ վասն զի զբոլոր ուղղութիւնս նորա ոչ բաւական եմ ասել՝ ի հանգիստ նորա նշխարացն դարձուցից զբանս։ Որպէս լուայ ի բազմաց և ի հաւատարիմ արանց, եթէ եկաց լոյս շողապէս ընդ աղօտ նշան խաչի ի վերայ դրանն ուր երանելին զհոգին աւանդեաց. ոչ փոյթ ընդ փոյթ լեալ էանց ծագումն, կամ սակաւուց տեսանելի, այլ ամենայն բազմութեան, մինչ յոլովից մկրտել յանհաւատից։ Յայնժամ լեալ աղմուկ չփոթի յամբոխութեանն, բաժանեալ յերիս գունդս, վասն հանգուցանելոյն զպարկեշտն զայն մարմին և նախ քան զմահն կրթեալ ի մեռելութիւն։ Կէսքն ա-

սէին տանել ի բնագաւառն իւր ի Տարօն, և ոմանք՝ ի Նախ աշակերտեալն Գողթն, և այլք անդէն ի Վաղարշապատ քաղաքի ի սրբոյն դիրս։ Բայց յաղթեաց քաջն Վահան Ամատունի, զի էր զօրաւոր հաւատովք և ճոխութեամբ մարմնաւորաւ. վասն զի ի ժամանակին յայնմիկ ի նա էր հաւատացեալ Պարսից զհազարապետութիւն Հայոց աշխարհիս. որոյ բարձեալ՝ տարաւ զնա արժանի յուղարկմամբ յիւր գիւղն Օշական։ Եւ նոյն տեսիլ լուսեղէն խաչին ի վերայ երթեալ դադարացն՝ յանդիման ամենայն ժողովրդեանն, մինչև ի հանգիստ զնա փոխեցին Վահան և Թաթիկ նորին արբանեակք, և ապա նշանն աներևոյթ լինէր» (Խոր. Գ. Կէ)։

**11**. Ըստ ժամանակագրութեանն, զոր կը դնէ Կորիւն ի վերջկոյս պատմութեանն, գիտնալով ևս Մեսրոպայ մահուան տարին, որ է 440՝ կը գտնենք գիրը գտնուած իբր 405-ին, այսինքն իբր 35 տարի յառաջ քան զմահ նորա. զհրաժարումն նորա յաշխարհէ՝ իբր 395-ին առ Վռամշապհով, այսինքն իբր 45 տարի յառաջ քան զմահն. իսկ մտանելն ի դուռն արքունի՝ իբր 386-ին առ Խոսրովաւ, այսինքն՝ իբր 53 տարի յառաջ քան զմահն։ Եթէ դնենք զնա իբր 24-ամեայ մտած ի դուռն՝ ծնունդ նորա կը հանդիպի իբր 361-ին կամ 362-ին. ուստի և կը հետևի թէ Մեսրոպ չէր աւելի քան 12-ամեայ, երբ առ Ներսիսի, իմա ի դպրոցի ուրեք նորա սկսաւ ուսանել։ Այս հաշուով Մեսրոպայ կենաց տարիներն եթէ չեղան շատ աւելի՝ չեղան ևս շատ պակաս քան 78։ Մեսրոպայ այնպէս իշխանաբար գործելէն ի Վիրս և յԱղուանս, այսինքն իբր իւր թեմին մէջ, կը տեսնուի թէ այն երկիրներն, այսինքն ոչ միայն Հայոց Վիրք և Աղուանք, որ կը թուին զայնու ժամանակաւ բաժանեալ ի Հայոց և միացեալ ընդ բուն կամ ազատ Վրաց և Աղուանից, այլ և վերջինք, զատուցեալք ի վաղուց անտի ի Հայոց Կուր գետով՝ էին ընդ իրաւասութեամբ եկեղեցւոյն Հայոց։ Զիարդ և իցէ՝ քրիստոնէական տեսութեամբ, այն մեծ շարժումը որուն պատճառ եղաւ Մեսրոպ իբրև ճշմարիտ առաքեալ յետ Լուսաւորչին՝ եղաւ անտարակոյս պատրաստութիւն մեծ այն սաստիկ հալածանաց դէմ, զոր յարոյց Սասանեան հարստութիւնն ընդդէմ քրիստոնէութեան, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Բայց քան առաքելական նախանձն Մեսրոպայ ի նպաստ քրիստոնէական հաւատոյ՝ ոչինչ ընդհատ մեծ և կարևոր է գիւտ հայերէն դպրութեան, զոր Մեսրոպայ պարտի ազգն։

**12**. Կարծենք յայտնի է, թէ յառաջ քան զՄեսրոպ և առ Մեսրոպաւ մինչև ի գիւտ հայերէն նշանագրաց՝ արքունիքն և եկեղեցին կը վարուէին յոյն կամ ասորի գրով, այսինքն յոյն կամ

տորի լեզուաւ, քանզի գիր կը նշանակէ լեզու կամ դպրութիւն, (և ոչ լոկ նշանագիր, որպէս թէ Հայք կը գրէին Հայերէն՝ յոյն կամ ասորի նշանագրօք, ինչպէս մեք այսօր կը գրենք Թուրքերէն՝ Հայերէն նշանագրօք)։ Նաև յայտնի է այս ի Փարպեցւոյն.— «Մաշթոց... ի տես մանկութեան իւրոյ ուսեալ դպրութիւն զյոյն, զենուորեալ ի դուռն Հայոց արքային Խոսրովայ, կարգեալ յերամ մատենագիր արքունի դպրացն, վասն զի ասորի և յոյն գրով վճարէին յայնժամ զգործ Թագաւորին Հայոց արքունի դպիրքն, զվճռուոցն և զհրովարտակաց» (Փարպ. Ժ.). և այլուր (Անդ)—«Հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշթոց, տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս, որք բազում Թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և բազմաժամանակեայ գեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան։ Քանզի պաշտօն եկեղեցւոյ և կարգացմունք Գրոց ասորի ուսմամբ վարէին ի վանորայս և յեկեղեցիս Հայաստան ժողովրդոցս. յորմէ ոչինչ էին կարող լսել և օգտել ժողովուրդքն այնպիսի մեծի աշխարհի, յանկրութենէ լեզուին ասորոյ»։ Արքունիքը կը վարուէր նաև պարսկերէնիւ (Խոր. Գ. ԾԲ.), և այս Թերևս յետ բաժանման երկրին, երբ յունարէնն արգելուեցաւ Պարսից բաժնին մէջ։ Ապաքէն դժուարութիւն մեծ էր այս Թէ եկեղեցւոյն և Թէ դրան։ Եկեղեցւոյն համար ասէ Խորենացին. «Եւ ի վարդապետել երանելւոյն Մեսրոպայ՝ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և Թարգմանիչ. և եթէ այլ ոք ընթեռնոյր, ուր նա ոչ հանդիպէր՝ զանխուլ ի ժողովրդեանէն լինէր, յաղագս ոչ լինելոյն Թարգմանիչ։ Վասն որոյ եդ ի մտի հնարել գտանել նշանագիրս Հայոց լեզուիս. և արկեալ զանձն ի ջանս՝ պէսպէս փորձիւք տաժանէր» (Խոր. Գ. ԽԷ.)։ Իսկ վասն արքունեաց ասէ դարձեալ նոյն զՎռամշապհոյ. «Եւ իջեալ նորա (ի Միջագետս) և կարգեալ զամենայն՝ ոչ փոքր ինչ կրէ աշխատութիւն յաղագս քարտուղարի. զի մինչև գնաց Մեսրոպ յարքունական դրանէն՝ ոչ զոք ի ճարտարաց գտանէր անդ ի դպրաց, քանզի պարսկականաւն վարէին գրով» (Խոր. Գ. ԾԲ.)։ Վռամշապուհ մոռացաւ Թերևս իւր դժուարութիւնը, բայց ոչ նոյնպէս Մեսրոպ, որ այս խնդրոյն համար գալով առ Սահակ՝ կը գտնէ զնա ի նոյն միտս, բայց չկարելով առժամուն գտանել հնարս՝ կը մեկնի։ «Առ նա (առ Սահակ) եկեալ Մեսրոպ յաղագս խնդրոյ նշանագրաց Հայոց՝ եգիտ զնա առաւել ևս փափագող այնմ. և յետ բազում ջանից և ոչինչ օգտելոյ մեկնեալ ի միմեանց՝ գնաց Մեսրոպ ի գաղարս իւր» (Խոր. Գ. ԽԹ.)։ Այսպէս ունի և Կորիւն. «Տրամական հոգովք պաշարեալ և անկեալ ի ծուփս խորհրդոց, եթէ որպիսի

արդեօք ևս իրացն գտանիցէ (վասն նշանագրաց)։ Իբրև աւուրս բազումս անդէն ի նմին դեգերէր՝ յարուցեալ այնուհետև հասանէր առ սուրբ կաթողիկոսն Հայոց մեծաց, որոյ անունն ճանաչէր Սահակ, զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանելոյ»։ Այս խորհրդակցութիւնը կը թուի թէ տևեց և հասարակաց եղաւ բարձրագոյն կղերին. քանզի ըստ պատմելոյ Խորենացւոյն Վռամշապհոյ դժուարութիւնն ի Միջագետս վասն քարտուղարի՝ ասէ. «Ելեալ արքայի ի Հայս՝ գտանէ ժողովեալ առ մեծն Սահակ և Մեսրոպ զամենայն եպիսկոպոսունս հոգալ զգիւտ դպրութեան Հայոց» (Խոր. Գ. ԾԲ.)։ Կորիւն, որ ոչինչ ընդհատ քան զԽորենացին մեծ ճախութիւն է, մանաւանդ թէ առաւել քան զնա, ոչ միայն իբրև ժամանակակից, այլև իբրև ի մօտոյ տեղեակ գործոյն՝ «ժողովեցին, ասէ, (Սահակ և Մեսրոպ) աշխարհահոգ խորհուրդ»։ Այսպէս հոգն եղաւ հասարակաց, մանաւանդ կղերական դասուն։ Ինչպէս կը տեսնուի ի բանից Կորեան, ևս և Փարպեցւոյն որ չէր հեռի ժամանակաւ՝ Սահակայ և Մեսրոպայ առաջին և մեծագոյն նպատակն ի տալ ազգին գիր և դպրութիւն՝ էր բոլորովին հոգևոր —ընծայել ազգին իւր լեզուաւ զհին և զնոր Կտակարանս, քանզի այնու միայն կը համարէին հաստատել զազգն ի հաւատս քրիստոնէութեան և դնել հիմն մտաւոր և բարոյական կրթութեան նորա։ Այս խորհուրդն ունէին բարեպաշտ մարդիկ, մանաւանդ կղերն, բազմօք յառաջ քան զՍահակ և զՄեսրոպ։ Անկարող կը տեսնէին զժողովուրդըն օգտել քրիստոնէական վարդապետութենէ առանց ունելոյ ի ձեռին զայն մատեան։ Չէ անհաւանական կարծել, թէ Մեսրոպ հայերէն գիր հնարելով Աստուածաշունչ մատեանն թարգմանելու խորհուրդն յղացաւ ի Գողթան, ուր վիպասանք յօրինելով երգեր կը տարածէին, և ժողովուրդը կ'ուսանէր զնոսա սիրով։ Մեսրոպ կը խորհէր թերևս, թէ եթէ Աստուածաշունչն հայերէն լեզուաւ և գրով տրուէր ժողովրդեան՝ կը խափանուէին հեթանոսական երգք և ցուցք, զորոց այնպէս կաթոգի էր ազգն, նախարարք և շինականք միանգամայն։ Զայս կը թուի յայտ առնել Բուզանդ. քրիստոնէական վարդապետութենէ կարէին օգտել, ասէ, նոքա միայն, «որք զհանգամանս գիտէին հելլէն կամ ասորի դպրութեանն», քանզի հմուտք այն լեզուաց կարող էին կարդալ զսուրբ Գիրս. «Իսկ որք արտաքոյ քան զգիտութիւն արուեստին էին այլ խառնաղանճ բազմութիւն մարդկան ժողովրդոց նախարարացն և շինականութեանն, եթէ զցայգ և զցերեկ նստեալ վարդապետացն ըստ նմանութեան ամպոցն իբրև զյորդահեղեղ ինչ անձրևաց սաստկութիւն զվարդապետութիւնն ի վերայ հոսէին՝ ոչ ոք ի նոցանէն և ոչ մի

բան, և ոչ կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ, և ոչ նշմարանս ինչ զոր լսէինն՝ կարէին ինչ ունել ի մտի։ Վասն զի միտք իւրեանց ընդ անպիտանս ընդ անօգուտս և եթ զբօսեալ էին... զիւրեանց երգս առասպելաց զվիպասանութեանն սիրեցեալք ի փոյթ կրթութեանցն, և նմին հաւատացեալք և ի նոյն հանապազորդեալք» (Բուզ. Գ. ԺԳ.)։ Զնոյն ասէ և Փարպեցին, որ յետ յիշելոյ ասորերէն լեզուն ուսանելու անհնարին և գրեթէ անօգուտ աշխատութիւնը՝ կը յաւելու. «Բազմութիւնք ժողովրդոց ունայնք և թափուրք հրաժարեալք գնային յեկեղեցւոյն. և ուսուցիչքն հանելով յոգւոց և հառաչելով զղջանային զսնոտի ջանն իւրեանց, յորում ոչ զոք յուսումնասէր ժողովելոցն տեսանէին օգտեալս ի վարդապետութենէ հոգևոր խրատուցն, որ է կերակուր և պարարումն իմաստնախնդիր անձանց, մինչև—կը յարէ—գտաւ գիր, և յաջողելով Քրիստոսի եկեալ յանձումն տակաւին զօրանայ» (Փարպ. ԺԱ.)։ Այս էր պատճառ Սահակայ և Մեսրոպայ այն ծանր թախծութեանն, զոր կը նկարագրէ Կորիւն. «Տրտմական հոգովք պաշարեալ և թակարդապատեալ և անկեալ ի ծուփս խորհրդոց, եթէ որպիսի՛ արդեօք ելս իրացն գտանիցէ։ Եւ իբրև աւուրս բազումս անդէն ի նմին դեգերէր՝ յարուցեալ այնուհետև հասանէր առ սուրբ կաթողիկոսն Հայոց մեծաց, որոյ անունն ճանաչէր Սահակ, զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ։ Եւ միանգամայն յօժարութեամբ գումարեալ հանդերձ աղօթիւք մեծովք առ Աստուած կանխէին, վասն ամենայն ոգւոց քրիստոսաբեր փրկութեանն հասանելոյ. և զայն առնէին աւուրս բազումս»։

Գանք այժմ ի պատմութիւն գիւտին նշանագրաց։ Ըստ Կորեան, որ է առանց երկբայութեան ժամանակակից և մերձաւորագոյն աղբիւր, երբ Սահակ և Մեսրոպ հանդերձ եպիսկոպոսօք յայտնեցին զիւրեանց փափագն վասն գիւտի հայերէն գրութեան՝ Վռամշապուհ պատմեց նոցա, թէ Դանիէլ անուն ասորի եպիսկոպոսի մը քով կը գտնուէին հայերէն նշանագիրներ, ուստի և ըստ խնդրոյ նոցա ղրկուեցաւ առ Դանիէլ Վահրիճ ոմն, և բերուեցան նշանագիրքն։ Իբր երկու տարի փորձուելով տեսնուեցան անբաւական ուղիղ հնչելու հայերէն բառերն—«ողջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուոյն», ուստի և թողուեցան, և արդէն այն նշանագիրք ժամանակաւ փորձուած և իբր անյարմար՝ թողուած էին։ Երբ այս յոյս նոցա ելաւ ի դերև՝ Սահակ և Մեսրոպ փորձեցին ժամանակ մի ևս ուրիշ հնարս, բայց չյաջողեցան։ Ապա Մեսրոպ գնաց յԱսորիս, յԵդեսիա, յԱմիդ, և յետ երկար աշխատելոյ՝ հնարեց մեր այժմու այբուբենն յԵդեսիա, և անտի երթալով ի Սամոսատ

(ոչ ի Սամոս), գտնելով քաջ հելլենագէտ ումն դպիր (դրիչ կամ քերական) Հռոփանոս անուն՝ նովաւ հանդերձ տառերուն զանազանութիւններն, նուրբը, երկայնը, կարճը, առանձինը, կրկնաւորը ճանչնալով և որոշելով, (այսինքն այբուբենը կազմելով)՝ կ'սկսի թարգմանել։ Այսպէս է բառ առ բառ։ Ահա բնագիրն.—«Բազում հարց փորձի և քննութեան զանձինս պարապեցուցեալ, և բազում աշխատութեանց համբերեալ (ժողով եպիսկոպոսացն հանդերձ Սահակաւ և Մեսրոպաւ)՝ ազդ առնէին ապա զկանխագոյն խնդրելին իւրեանց թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ։ Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն ասորւոյ եպիսկոպոսի Դանիէլ անուն կոչեցելոյ, որոյ (էր գտեալ) յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի։ Եւ իբրև պատմեցաւ նոցա յարքայէ վասն գրելոյն (թերևս գրենոյն) ի Դանիէլէ՝ յօժարեցին զարքայ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ։ Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն հրովարտակօք առ այր մի երէց, որոյ անուն Հաբէլ կոչէին, որ էր մերձաւոր Դանիելի ասորւոյ եպիսկոպոսի։ Իսկ Հաբելին զայն լուեալ՝ փութանակի հասանէր առ Դանիէլն, և նախ ինքն տեղեկանայր ի Դանիելէ նշանագրոյն, և ապա առեալ ի նմանէ առաքէր առ արքայն յերկիրն Հայոց, ի հինգերորդի ամի (396 կամ 397) թագաւորութեան նորա ի նա հասուցանէր։ Իսկ արքայն հանդերձ սրբովն Սահակաւ և Մաշթոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի Հաբելէն՝ ուրախ լինէին։ Ապա առեալ երանելի հոգաբարձուացն զյանկարծագիւտն՝ խնդրէին հայցէին ևս յարքայէ մանկունս մատաղս, որով զնշանագիրսն մարթասցեն։ Եւ յորժամ բազումք ի նոցանէ տեղեկանային՝ ապա հրաման տայր (Մեսրոպ) ամենայն ուրեք նովին կրթել... և իբրև ամս երկուս կարգեալ զվարդապետութիւն իւր նովին նշանագրովք տանէր։ Իսկ իբրև ի վերայ հասեալ (հասանէր), թէ չեն բաւական նշանագիրքն ողջ ածել զսիւղոբայս և զկապս հայերէն լեզուոյն, մանաւանդ զի և նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան՝ յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային, և նմին ելս խնդրէին ժամանակս ինչ։ Վասնորոյ առեալ երանելւոյն Մաշթոցի դաս մի մանկտւոյ հրամանաւ արքայի և միաբանութեամբ սրբոյն Սահակայ... խաղայր գնայր ի հինգերորդ (իմա՝ յեօթներորդ) ամի Վռամշապհոյ. և երթեալ հասանէր ի կողմանս Արամի (Ասորւոց) ի քաղաքս երկուս Ասորւոց, որոց առաջինն Եդեսիա կոչի, և երկրորդն՝ Ամիդ անուն։.. Զատարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութեանն կարգէր, և զոմանս յունական դպրութիւն... Եւ նորա իւրովք հաւասարօք զսովորականն

առաջի եդեալ զաղօթս և զտքնութիւնս և զպաղատանս արտասուալից, զխստամբերութիւնս, զհոգս աշխարհահեծս:... Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն իւրոյ ազգին բարեաց օճան գտանելոյ. որում պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ, հայրական չափուն ծնեալ (ծնանել) ծնունդս նորոգ և սքանչելի, սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին: Եւ անդ վաղվաղակի նշանակեալ անուանեալ և կարգեալ, յօրինէր սիւղոբայիւք և կապօք:... Ապա հանդերձ օգնականօք իւրովք իջանէր ի քաղաքն Սամոստացւոց... և անդէն ի նմին քաղաքի գրիչ ոմն հելլենական դպրութեան Հռոփանոս անուն գտեալ. որով զամենայն ընտրութիւնս նշանագրոյն, զնրբագոյնսն, զկարճն և զերկայնն, զառանձինն և զկրկնաւորն միանգամայն յօրինեալ և յանկուցեալ՝ ի թարգմանութիւն դառնայինն» (Կորիւն):

Խորենացին այս մութ պատմութիւնը ջանալով պարզել՝ առաւել կը խառնակէ: Ըստ Խորենացւոյն՝ Հաբէլ «խոստանայր (Վռամշապհոյ) հայկականաց լեզուաց (քանի՞ հայերէն կար) առնել (յօրինել, շինել) նշանագիր, յարմարեալ ի Դանիէլէ եպիսկոպոսէ յիւրմէ մերձաւորէ»: Ուրեմն այն նշանագիրք շինուած և յարմարուած էին, բայց յումմէ՞, Հաբելէ՞ թէ Դանիէլէ: Եթէ նշանագիրքն պիտի շինուէին Հաբելէ (ըստ խոստման նորա—«խոստանայր հայկականաց լեզուաց առնել նշանագիր». Խոր. Գ. ԾԲ.), և յարմարեալ էին ի Դանիէլէ («յարմարեալ ի Դանիէլէ եպիսկոպոսէ յիւրմէ մերձաւորէ» Խոր. Անդ.—անիմաստ խօսք), ինչ կը նշանակէ կոչելն Խորենացւոյն այն նշանագիրները «վաղընջուց գտեալ»: Դարձեալ՝ ըստ Խորենացւոյն Հաբէլ և Վահրիճ «կարգեալ ըստ ձևոյ օրինակի յունականին զվաղընջուց գտեալ նշանագիր տառից՝ եկեալ ետուն ցմեծ Սահակ և Մեսրոպ»: Ի՞նչ կը նշանակէ «կարգել ըստ ձևոյ օրինակի յունականին». յունարէն նշանագրաց ձև՞ը տուին նոցա, թէ ըստ յունարէն այբուբենին շարեցին: Ի բանից Խորենացւոյն այնպէս կը հասկցուի, թէ կային ի վաղուց մնացած նշանագիրներ, այսինքն հին անծանօթ այբուբեն մը, զոր Դանիէլ յարմարցուցած էր հայերէն լեզուին, և Հաբէլ և Վահրիճ յունարէն տառերուն ձև տալով նոցա՝ բերին առ Սահակ և Մեսրոպ: Կորիւն չունի այս պարագաներն, այլ ասէ. «Որոյ (Դանիէլի, գտեալ էր) յանկարծ ուրեմն նշանագիրս աղփաբետաց հայերէն լեզուի»: Կորիւն չասէ նաև թէ այս ինչ կամ այն ինչ ձևով կամ օրինակաւ կարգեցան այս նշանագիրք: Առ Կորեան այս գիւտին մէջ հրաշք ընդ ազօտ միայն կը նշմարուի. ըստ Խորենացւոյն յայտնի հրաշք կայ: Ըստ Կորեան՝ «ամենաշնորհողն Աստուած» պարգևեց նմա՝ իբրև

Հայր իւր (զՄեսրոպ ակնարկելով) սուրբ աջովն ծնանել այս նորոգ և սքանչելի ծնունդը, զնշանագիրս Հայերէն լեզուին։ Այս, որ գրեթէ այլաբանութիւն է կամ բարեպաշտ ասացուած՝ առ Խորենացւոյն կը փոխուի ի յայտնութիւն.— Մեսրոպ «տեսանէ ոչ ի քուն երազ և ոչ յարթնութեան տեսիլ. այլ ի սրտին գործարանի երևութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ, գրելով ի վերայ վիմի ա, ե, է, ը, ի, ո, ւ. զի որպէս ի ձեան վերջք գծին կուտեալ ունէր քարն»։ Եւ այս «ոչ միայն երևութացաւ, այլև հանգամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ»։ Եթէ Մեսրոպ արդարև կը տեսնէր «թաթ ձեռին աջոյ գրելով ի վերայ վիմի»՝ կը տեսնէր կամ ի քուն իբրև երազ, կամ յարթնութեան իբրև տեսիլ. եթէ չէր ոչ մին և ոչ միւսն, որպէս ասէ Խորենացին՝ ապա էր ոչինչ։ Անիմաստ բառեր են «հոգւոյն աչք», «սրտին գործարան»։ Եթէ Խորենացին այս բառերով կ'իմանայ յայտնութիւն՝ յայտնութիւնը չէ երևոյթ, այլ ինչպէս կ'ըսուի՝ ազդումն ինչ յԱստուածուստ։ Բայց յայտնութիւն երազով կամ տեսլեամբ՝ մեզի համար չունի ամենեւին նշանակութիւն. մենք չենք կրնար որ և իցէ կերպ յայտնութեան ընծայելով մեր գրոյն գիւտն՝ առնել ծաղրելի մեր պատմութիւնը լուսաւորեալ աշխարհի։ Ուստի թողլով մեր սիրելի ծերունին իւր բարեպաշտ միամտութեան մէջ՝ բնականէ դուրս բան չենք տեսներ մեր այբուբենի գիւտին մէջ։ Թեթև ակնարկութիւն մի միայն մեր այբուբենին վրայ բաւական է ցուցնել, թէ Մեսրոպայ գործն եղաւ այս անուանեալ գիւտին մէջ՝ հայացունել Յունաց այբուբենական դրութիւնը։ Զարմանալի է, որ «թաթն ձեռին աջոյ» Խորենացւոյն գրեց քարին վրայ ա, ե, է, ը, ի, ո, ւ, և ոչ՝ ա, բ, գ, դ, ե, զ, ևն։ Ուրեմն մեր «Մանէ, Թեկեղ Փարէսն» էին ձայնաւորք։ Երբ ա, ե, է, ը, ի, ո, ւ գտնուեցան, կամ մանաւանդ մուծան յունարէն այբուբենին միւս տառերուն հետ՝ լուծաւ առեղծուածն, իսկոյն սկսան «փոխատրել հայերէն աթուլթայք (բաղաձայնք) ըստ անսայթաքութեան սիւղոբայից հելլենացւոց»։ Եթէ այն հրաշալի թաթն գրեց ձայնաւորներ միայն՝ յայտնի է թէ չկային պէտք բաղաձայնից։ Հոս բնական խելքը կ'ելլէ ջատագով գերբնական թաթին, վկայելով թէ հայերէն լեզուն ունէր գիր. ապա թէ ոչ ինչպէս կրնար հասնել յայն չափ՝ յոր հասած էր մինչև ի Մեսրոպ։ Հարկ է ուրեմն դնել, թէ Մեսրոպ ունէր ի ձեռին հին հայերէն անշունչ և անկենդան այբուբէն մը բաղաձայններէ կազմեալ, ոչ անծանօթ սակաւ գրագիտաց, նոցին իսկ Սահակայ և Մեսրոպայ և նոցայոցն, որում տուաւ Մեսրոպ շունչ և կենդանութիւն՝ մուծանելով Յունաց ձայնաւորներն։ «Փչեաց Աստուած յԱդամ

շունչ կենդանի, և եղև Ադամ յոգի կենդանի»։ Ահա՛ գաղտնիք Մեսրոպեան գիւտին։ Մեսրոպ յետ մուծանելոյ հին այբուբենին մէջ Յունաց ձայնաւորներն՝ կը մնար շարել հայերէն տառերն ըստ այփաբետին Յունաց. յայսմ օգնեց նմա Հռոփանոս, «Հրաշալին արուեստիւ հելլէն գրչութեան»։ Թէ՛ ինչպէս՝ բաւական են ցուցանել բառք Կորեան—«նրբագոյն», «կարճ», «երկայն», «առանձին», «կրկնաւոր»։ Հրաշալին արուեստիւ ունէր արուեստ մը, որ նպաստեց Մեսրոպայ ի շարել հայերէն տառերն առաջի յունականաց ըստ բնութեան նոցա։ Այս արուեստը չէր «կերպաձևել», բառ մը՝ որ չունի վայելչութիւն, հոս և ոչ տեղի։ Հոս ունինք կարևոր հարցում մը, որում պարտի պատասխանել Խորենացին։ Մեսրոպ յետ ընդունելոյ իւր այբուբենն յԱստուծոյ, ի՞նչ պէտք ունէր վազել Հռոփանոսներու։ Միթէ աւելի՞ ինչ գիտէր Հռոփանոս քան զՀրաշալին թաթ ձեռին աջոյ, որով ոչ միայն ցուցան նմա նշանագիրքն, այլև «հանգամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ»։ Մեծաւոր պատմիչք մեր շատ անգամ յայտնել մեզ ճշմարտութիւնը կամ չեն կամիր, և կամ չեն կարող։ Այս չուառ բախտին հանդիպած կ'երևի նաև նշանագրաց գիւտին պատմութիւնը։ Ուստի իբրև բովանդակութիւն կը յաւելունք.—

Նախ. չէ ճշմարիտ այն որ ընդհանրապէս կը կարծուի, թէ Հայք յառաջ քան զՄեսրոպ չունէին նշանագիր, ուստի և էին անմասն դպրութենէ։ Նայելով հանգամանաց հայերէն լեզուին յառաջ քան զՄեսրոպ՝ անհնար էր լեզուին առանց դպրութեան հասնել յայն աստիճան զարգացման՝ յորում կը գտնենք զնա ի հատակոտորս երգոց վիպասանաց, որոց կատարեալ նմանութիւն է թարգմանչաց լեզուն։ Այսմ վկայ ունինք զՓարպեցին, որ ի մեղադրելն զազգն վարուելուն համար ասորի լեզուաւ ի պաշտամունս եկեղեցւոյ՝ կը յաւելու. «մանաւանդ թէ զոն նշանագիրք հայերէն լեզուիս, որով հնար է ինքեան ձայնիւ և ոչ մուրացածոյ բարբառով շահել զօգուտ արանց և կանանց առ հասարակ»։ Զայս ասէ Փարպեցին յառաջ քան զգիւտ Մեսրոպեան նշանագրաց, թէպէտ չյայտներ, թէ որպիսի՞ ինչ կամ ո՞ւր էին այն նշանագիրք։

Երկրորդ. բաւական յայտնի է, թէ Դանիէլեան գիրն ոչ այլ ինչ էր՝ եթէ ոչ սեմական լեզուաց, յանուանէ ասորերէնի ոճով առանց ձայնաւորի շինուած այբուբեն մը, յարմարցուած հայերէնի, բայց ինչպէս կ'երևի՝ անկատար յոյժ, թերևս աջէն ձախ, մինչև երկիցս փորձուելով՝ տեսնուեցաւ անյարմար։

Գալով Մեսրոպեան նշանագրաց՝ յայտնի է թէ շինուած է յունարէն այբուբենի ոճով և արուեստիւ, կամ եթէ արժան է ասել՝

յունարէնի տառաղձիւ, ճշդիւ նման նմին, ինչպէս արդէն բսուեցաւ։ Ահա Մեսրոպեան այբուբենն համեմատեալ ընդ յունին.

| | | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| ա | բ | գ | դ | ե | զ | է | (ը) | թ | (ժ) | ի | (լ | խ | ծ) | կ | (հ | ձ) | ղ | (ճ) |
| α | β | γ | δ | ε | ζ | η | | ϑ | | ι | | | | κ | | | λ | |

| | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| մ | (յ) | ն | (շ) | ո | (չ) | պ | (ջ | ռ) | ս | (վ) | տ | ր | (ց) | ւ | փ | ք. |
| μ | | ν | | ο | | π | | | σ | | τ | ρ | | υ | φ | χ. |

Տառք փակագծէ դուրս՝ են ճիշդ յունարէն։ Փակագծի մէջ առնուածներէն Ը, (հնչում մը զոր չունի յունարէնը, և որ Հայերէնի համար պարտ էր ունենալ զատ նշանագիր բառերու սկիզբը Ռ. Մ. Ղ գիրերէ առաջ), առնուած է հին այբուբենէն կամ հնարուած։ Ժ. Շ լծորդ են ընդ Ս-ի, թէպէտ ուրոյն հնչումն։ Լ կը պատասխանէ յունարէն λ-ի, միայն է աւելի թանձր, ուստի և յարմարցուած է λ-էն Ղ, իբրև աւելի մեղմ հնչումն։ Խ է կոկորդային զոր չունի յունարէնն, ուստի և մուծուած հին այբուբենէն։ Ծ. Ճ, Ց, ինչպէս նաև Ձ. Ջ. Չ են Հայերէնի յատուկ հնչումներ, միւս բաղաձայններուն պէս երեք կարգ—կակուղ (ծ, ճ), միջին (ձ, ջ) և թանձր (ց, չ)։ Հ է հագա-գային, որ ընդհանրապէս կը պատասխանէ յունարէնի ʽ և ʻ նշան-ներուն։ Յ նոյն է ընդ ի ձայնաւորին։ Ո կը պատասխանէ յունա-րէնի ὁ-ի և շատ անգամ կը գրուի Հ-իւ—Հո։ Ու—υ, որ չգտնուիր բառերու սկիզբը՝ յունարէն υ-ի պէս ուրիշ ձայնաւորներով կը կազ-մէ երկբարբառներ, ինչպէս աւ—αυ, եւ—ευ, իւ—ιυ, ու—ου։ Վ ունի ւ-ի և ու-ի հնչումը բառերու սկիզբը, և ո-իւ—ով՝ կը պատասխանէ յունարէն ω-ի։

Այս է արուեստ կամ գաղտնիք Մեսրոպեան այբուբենին, որոյ յօրինման համար ոչ տեսիլ պիտոյ էր և ոչ հրաշալի թաթ ձեռին աջոյ։ Բայց և այնպէս հարկ է խոստովանել շնորհակալութեամբ, թէ Մեսրոպ եղաւ արդարև Նոր Կադմոս, հայր հայերէն այբուբենին։

**13.** Գանք այժմ թարգմանութեան։ Թարգմանութեամբ կ'ի-մացուի մանաւանդ հին և նոր Կտակարանաց թարգմանութիւնն, որ կ'ընծայուի Սահակայ և Մեսրոպայ և ոմանց յաշակերտաց նոցա։ Այսպէս է արդարև ըստ վկայութեան ժամանակակից և ստուգա-գոյն պատմութեան։ Կորիւն, որ ոչ միայն ժամանակակից, այլև մի-ջամուխ է թարգմանութեան գործին՝ կը պատմէ ուրեք զՄեսրո-պայ այսպէս.—Յետ կարգելոյ և յօրինելոյ զհայերէն այբուբենն՝ Մեսրոպ ուրիշ երկու աշակերտօք սկսաւ թարգմանել, սկիզբն առ-նելով յԱռակաց.—«Որով (Հռոփանոսիւ) զամենայն ընտրութիւնս նշանագրոյն... յօրինեալ և յանկուցեալ՝ ի թարգմանութիւն դառ-նային (դառնայր) հանդերձ արամբք երկուք աշակերտօքն իւրովք.

որոց առաջնոյն Յովհան անուն կոչէին, յԵկեղեաց գաւառէն, և երկրորդին Յովսէփ անուն, ի Պաղանական տանէն. եդեալ սկիզբն նախ յԱռակացն Սողոմոնի, որ ի սկզբանն իսկ ծանօթս իմաստութեան ընծայեցուցանէ լինել ասելով, եթէ ծանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ» (Կորիւն)։ Խորենացին ևս կը պատմէ նոյնպէս, միայն կու տայ թարգմանել Մեսրոպայ բովանդակ Հին և Նոր Կտակարաններն.—«Հանդերձ Հռոփանոսիւ կերպաձևեալ զգիրն Մեսրոպայ առ ձեռն պատրաստ... իսկոյն ի թարգմանութիւն ձեռն արկեալ, խորհրդաբար սկսանելով յԱռակաց, բովանդակ զքսան և երկու յայտնիսս և զնոր Կտակս յեղուլ ի հայ բան. նա և աշակերտք նորա Յովհան Եկեղեցայլին և Յովսէփ Պաղնացի» (Խոր. Գ. ԾԳ.)։ Հաւանականագոյն է սակայն, թէ թարգմանեալն ի Մեսրոպայ էր Առակաց գիրք միայն, քանզի Կորիւն բովանդակ Ս. Գրոց թարգմանութիւնը կ'ընծայէ Սահակայ.—«Իսկ երանելոյն Սահակայ զեկեղեցական Գրոց գումարութիւն կանխաւ յունական բարբառոյն ի հայերէն դարձուցեալ, դարձեալ յետ այնորիկ (այսինքն երբ թարգմանիչք բերին ի Կոստանդնուպոլսոյ սուրբ Գրոց ընտիր օրինակներ) առեալ հանդերձ Եզնկաւ զյառաջագոյն զյանկարծագիւտ զփութանակի թարգմանութիւնս հաստատէր ճշմարիտ օրինակօք բերելովք»։ Խորենացին ևս գիտէ թարգմանութիւն մի որ առաջ եղած էր՝ ուղղուած յետոյ ըստ ստուգագոյն օրինակաց. բայց յայսմ ևս կը տարբերի իւիք իւիք ի Կորենէ. —«Ապա եկեալ թարգմանիչք մեր... մատուցին զստոյգ օրինակս Գրոց, զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ՝ դարձեալ թարգմանեցին զմի անգամ թարգմանեալն փութանակի, հանդերձ Նոքօք վերստին յօրինել նորոգմամբ» (Խոր. Գ. ԿԱ.)։

Ըստ Կորեան՝ թարգմանութիւնն էր Սահակայ, և նա էր դարձեալ ուղղիչ կամ սրբագրող հանդերձ Եզնկաւ։ Խորենացին զՄեսրոպ ևս կը խառնէ, ուղղութիւնը կը դնէ եղած ոչ Եզնկաւ միայն, այլ «նոքօք հանդերձ», այսինքն բոլոր թարգմանչօք։ Կորիւն ասէ. «Հաստատէր զյառաջագոյն թարգմանութիւնսն ճշմարիտ օրինակօք»։ Խորենացին ասէ. «Միւսանգամ թարգմանեցին զմիանգամ թարգմանեալն փութանակի։ Բայց թարգմանութեամբ չիմացուիր Հին և Նոր Կտակարանաց թարգմանութիւնը միայն, այլև ուրիշ գրոց, մանաւանդ հին Հարց Յունաց։ Կորիւն յետ յիշելոյ Գրոյն թարգմանութեան ուղղութիւնը, որ եղաւ ի ձեռն Սահակայ և Եզնկայ ըստ ստոյգ օրինակաց՝ կը յաւելու. «Եւ շատ ևս մեկնութիւն Գրոց թարգմանէին»։ Աստի կրնանք հետևցունել, թէ Ոսկեբերանի, Կիւրղի և այլ Հարց, մանաւանդ առաջնոյն մեկնութիւններուն մեծ

ման են գործք Սահակայ և Եզնկայ։ Այլուր ասէ Կորիւն զՍահակայ և Մեսրոպայ միանգամայն, և մանաւանդ զՍահակայ, թէ կը պարապէին ի թարգմանել և ի գրել.—«Յետ այնորիկ ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւն առնել յարգել և դիւրացուցանել՝ ձեռն ի գործ արկանէր ի թարգմանել և ի գրել մեծն Սահակ ըստ յառաջագոյն սովորութեանն»։ Եւ Մեսրոպայ համար ասէ. «Թարգմանէր, գրէր և ուսուցանէր»։

**14.** Սահակ և Մեսրոպ բաւական չհամարելով զիւրեանց աշխատութիւնն՝ կը ղրկեն նաև իւրեանց աշակերտներէն զոմանս որ հմուտ էին թարգմանութեան, որ այն ժամանակ առանձին արուեստ էր՝ յԵդեսիա և ի Կոստանդնուպոլիս, թարգմանել ի հայ զգործս ասորի և յոյն հարց։ Թարգմանչաց առաքման պատմութիւնն է այս ըստ Կորեան։—Սահակ և Մեսրոպ իւրեանց աշակերտներէն զերկուս, զՅովսէփ ոմն և զԵզնիկ, կը ղրկեն յԵդեսիա թարգմանել ասորի հարց գրուածներն։ Թարգմանիչք կատարելով այս գործը և ղրկելով թարգմանութիւններն առ Սահակ և Մեսրոպ՝ կ'երթան ի Կոստանդնուպոլիս, և քաջ ուսանելով յունարէն՝ կ'սկսին թարգմանել նաև յոյն հարց գործերէն։ Կ'երթան առ նոսա ուրիշ երկու աշակերտք առանց ղրկուելու, այն է Ղևոնդ և Կորիւն, և միաբանութեամբ կատարելով գործը՝ կը դառնան ի Հայս, բերելով Ս. Գրոց վաւերական օրինակներ, հարց գրուածներ և Նիկիոյ և Եփեսոսի ժողովներուն կանոններն.—«Որոց (Սահակայ և Մեսրոպայ), ասէ Կորիւն, դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս Ասորւոց ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ զոր ի վերոյն յիշեցաք, և երկրորդն Եզնիկ անուն, յԱյրարատեան գաւառէն, ի Կողբ գեղջէ, զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս հայերէն գրելոյ դարձուսցեն։ Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն և կատարեալ զհրամանսն և առ պատուական հարսն առաքեալ՝ անցեալ գնային ի կողմանս Յունաց, ուր և ուսեալք տեղեկացեալք՝ թարգմանիչս կարգէին ըստ հելլենական լեզուին։ Ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ դէպ լինէր ոմանց եղբարց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որ և Ղևոնդէս առաջնոյն անուն էր և երկրորդին՝ Կորիւնս, և մատուցեալ յարէին յԵզնիկն, իբրև առ ընտանեգոյն սննդակից ի Կոստանդինական քաղաքին, և անդ միաբանութեամբ հոգևոր պիտոյից զխնդիրն վճարէին։ Եւ յետ այնորիկ հաստատուն օրինակօք աստուածատուր Գրոցն և բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութեամբք և Նիկիական և Եփեսոսական կանոնօք գային երևելով աշխարհին Հայոց, և առաջի դնէին հարցն

զբերեալ կտակարանսն եկեղեցւոյ սրբոյ» (Կորիւն)։ Խորենացին ևս կը պատմէ նոյնպէս, յաւելլով պարագայս ինչ։ Ըստ Խորենացւոյն՝ Յովսէփ և Եզնիկ, որ զրկուեցան յԵդեսիա, լսելով յոմանց, թէ Սահակ և Մեսրոպ կը խորհին զալլս առաքել ի Կոստանդնուպոլիս նոյն գործին համար՝ առանց հրամանի Սահակայ և Մեսրոպայ կը փութան երթալ ի Կոստանդնուպոլիս։ Ընդ նոսա նախանձելով Ղևոնդ և Կորիւն՝ ինքնակամ կ'երթան ի Կոստանդնուպոլիս. յետոյ կը հասնին Յովհան և Արձան, որ վաղ իսկ սահմանեալ էին Կոստանդնուպոլսոյ համար, բայց դանդաղութեամբ ճանապարհորդելով՝ յամեցին։ Թարգմանիչք մեր գտան մեծ ընդունելութիւն, կը յաւելու Խորենացին, Նեստորի յաջորդէն Մաքսիմիանոսէ (431), որ էր յայնժամ պատրիարք Կոստանդնուպոլսի.—«Ապա եկեալ և առեալ Մեսրոպայ և մեծին Սահակայ զնոյն աշակերտս, զՅովսէփ և միւս ընկեր նմին ի Կողբ գեղջէ, որում անուն Եզնիկ կոչիւր՝ առաքեն ի Միջագետս ի քաղաքն Եդեսիայ. զի որ միանգամ գտցի անդ գիրք ասացեալ նոցին սրբոց հարցն առաջնոց՝ թարգմանեալ ի մեր լեզուս բերցեն փութով. զի յետ այնր ի Բիւզանդիոն առաքեսցեն ի նոյն գործ։ Որոց ընկալեալ զհրապուրական թուղթս սուտակասպասաց ոմանց, իբր թէ պատրաստին մեծն Սահակ և Մեսրոպ զալլս առաքել ի Բիւզանդիոն՝ վասնորոյ առանց հրամանի վարդապետացն իւրեանց նոյն ընդ նոյն չուեալ գնացին ի Բիւզանդիոն, նախանձաւոր բարեաց եղեալ ուսմանց. և քաջ վարժեալ հելլէն դպրութեամբ՝ ձեռնարկեցին ի թարգմանել և ի գրել։ Եւ ընդ նոսա նախանձեալ ընկերաց իւրեանց աշակերտակցաց, որոց անուանքն Ղևոնդ և Կորիւն կարդային՝ յիւրեանց կամաց ելին առ նոսա ի Բիւզանդիոն։ Ապա եւլանեն անդր Յովհան և Արձան, զորս կանխագոյն առաքեալ էր Մեծին Սահակայ և Մեսրոպայ. որոց յուլաբար ուղևորեալ և ծուլաբար դեգերեալք պատաղեցան ի Կեսարիա։ Որոց ընդունելութիւն ամենեցուն մեծապէս արար Մաքսիմիանոս եպիսկոպոսն Բիւզանդացւոց»։

**15.** Խորենացին յետ յարելոյ ի նոյն Եփեսոսի ժողովոյն պատմութիւնը (Խոր Գ. ԿԱ.)՝ կը յաւելու. «Եւ վասն զի ոչ հանդիպեցան յայնմ ժողովի մեծն Սահակ և Մեսրոպ՝ գրեն առ նոսա Կիւրեղ Աղեքսանդրացի և Պրոկղոս Կոստանդնուպոլսի և Ակակ Մելիտինոյ եպիսկոպոսք, զգուշացուցանելով զնոսա. քանզի լուան եթէ ոմանք ի չարափառացն աշակերտացն առեալ զգիրսն Թէոդորոսի Մամուեստացւոյ, զվարդապետին Նեստորի և աշակերտին Թէոդորի (Դիոդորի)՝ գնացին յաշխարհն Հայոց։ Ապա եկեալ թարգմանիչքն մեր, զորոց անուանսն յիշատակեցաք յառաջագոյն՝ գտին զմեծն Սա-

Հակ. և զՄեսրոպ յԱշտիշատ Տարօնոյ, և մատուցին զԹուղթս և զկանոնս ժողովոյն Եփեսոսի, վեց սահմանեալ կանոնաւ գլխով, և զստոյգ օրինակս Գրոց։ Զոր առեալ մեծին Սահակայ և Մեսրոպայ՝ դարձեալ թարգմանեցին զմի անգամ թարգմանեալն փութանակի, հանդերձ նոքօք վերստին յօրինել նորոգմամբ» (Խոր. Գ. ԿԱ.)։

**16.** Խորենացւոյն այս պատմութիւնը կու տայ մեզ գրեթէ թարգմանչաց առաքման հաւանական թուականը։ Ընդունելութիւնն Մաքսիմիանոսի պատրիարքին, որ յաջորդեց Նեստորի (431--434), և թուղթն Պրոկղի, որ նստաւ յետ Մաքսիմիանոսի (434 – 437)՝ կը ցուցնեն, թէ ո՛չ գնալն թարգմանչաց ի Կոստանդնուպոլիս եղաւ յառաջ քան 431, և ոչ մեկնել նոցա Կոստանդնուպոլսէ եղաւ յետ 437-ին. ուստի թարգմանիչք դարձան ի Հայս իբր 3 կամ 4 ամօք յառաջ քան զմահ վարդապետաց իւրեանց, այն է իբր 437-ին։

**17.** Կը մնայ մեզ գիտել, թէ զո՛վ կամ ինչ պարտ է իմանալ թարգմանիչ անուամբ։ Այս անունը կը գտնենք տրուած ժամանակակից պատմութեան մէջ Մեսրոպայ և նորա աշակերտներէն իբր հինգ կամ վեց մարդոց, որ են Յովհան, Յովսէփ, Եզնիկ, Կորիւն, Ղևոնդ և Արձան. ո՛չ վասն զի եղան նոքա թարգմանիչ յետ գիւտի գրոյն՝ այլ վասն զի էին արուեստիւ թարգմանիչ յառաջագոյն իսկ քան զգիւտ գրոյն։ Այս յայտնի է մանաւանդ զՄեսրոպայ, զոր Խորենացին, ինչպէս տեսանք՝ կ'անուանէ յառաջագոյն իսկ քան զգիւտ գրոյն՝ *Թարգմանիչ.* տիտղոս՝ որ չէր հասարակ բոլոր վարդապետաց կամ ընթերցողաց ժամանակին.—«Եւ ի վարդապետել երանելոյն Մեսրոպայ ոչ փոքր կրէր վտանգս, քանզի ինքն էր ընթերցող և *Թարգմանիչ.* և եթէ այլ ոք ընթեռնոյր ուր նա ոչ հանդիպէր՝ զանխուլ է ժողովրդոցն լինէր, յաղագս ոչ լինելոյն *Թարգմանիչ*»։ Ինչպէս յայտնի է՝ հոս կ'ակնարկուի ժամանակն յառաջ քան զգիւտ գրոյն։ Ի ԿԱ. գլուխ Գ. դպրութեանն կու տայ Խորենացին նոյն անունն իբրև տիտղոս նաև յիշեալ վեցին.--«Ապա եկեալ թարգմանիչքն մեր զորոց անուանսն յիշատակեցաք յառաջագոյն», և այլն, այսինքն Յովսէփ, Յովհան, Եզնիկ, Կորիւն, Ղևոնդ, Արձան, զորս յիշած է նախորդ (Կ) գլխոյն մէջ։ Կորիւն ևս այս անունը կու տայ նոյն անձանց.—«Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն», և այլն,—բաց ի վերջնոյն, յԱրձանայ, որոյ անունը չիք առ Կորեան։ Հաւանական է, թէ Յովհան, Յովսէփ, Եզնիկ և այլք, որ փոք և խսկ ի գտանել գրոյն սկսան առնել թարգմանութիւնս՝ էին արդէն վարժք և ընդելք ի թարգմանել, ուստի և հմուտ թարգմանութեան արուեստին։ Դրացի քրիստոնեայ ազգեր ևս, յանուանէ Վիրք և Ազուանք, ունէին զայնու ժամանակաւ այսպիսի թարգ-

մաններ։ Այսպէս Ջաղայ ոմն էր «թարգման վրացերէն լեզուին, այր գրագէտ և ճշմարտահաւատ» ըստ Կորեան։ Ջաղայ կը յիշուի նաև ի Խորենացւոյն իբրև թարգման.—«Ջաղայիւ ումամբ թարգմանաւ Հելլէն և հայ լեզուի»։ Թարգման էր և «Բենիամէն երէց Աղուան ազգաւ» ըստ Կորեան, ըստ Խորենացւոյն՝ «շնորհաւոր թարգման»։ Սոցա հետ խորհրդակցելով յօրինեց Մեսրոպ Վրաց և Աղուանից այբուբենն ըստ մեր պատմութեան։ Թէ ինչ էր և ինչպէս կ'ուսանէին թարգմանչութիւնը՝ չենք գիտեր որոշ ինչ. կը թուի սակայն, թէ թարգմանչութիւնն էր առանձին ուսումն և արուեստ, զոր ոչ ամենեքին գիտէին, այլ սակաւք ոմանք, ինչպէս էր փիլիսոփայութիւնն։ Ինչպէս արուեստը՝ նոյնպէս մեթոտը կամ եղանակն որով կ'ուսանէին այն ուսումը կամ արուեստն՝ է մեզ անծանօթ։ Այս արուեստին առանձին յատկութիւններէն մին էր անսպառ ծննդականութիւնը, որով կը յաւելուին նոր նոր բառեր ի լեզուին։ Այս ծննդականութեան գաղտնիքն սկսած է նշմարուիլ։ Այսպիսի բեղմնաւոր լեզու անհնար էր որ չունենար իւր գանձարանն, ուր աւանդէր իւր հարստութիւնն յաջորդ սերնդոց. ուստի և անըմբռնելի կը թուի մեզ դնել մեր հին լեզուն ամենևին առանց իրիք գրի և գպրութեան յառաջ քան զՄեսրոպեանն։ Յետ գիւտի գրոյն, երբ մատենագրութիւնը դիւրացաւ և ընդհանրացաւ՝ դադարեցաւ թարգմանչութիւնը, նովին և արուեստը և ծննդականութիւնը։

**18.** Սակայն Հայք յառաջագոյն իսկ քան զթարգմանիչս սովոր էին երթալ ինչպէս յԵդեսիա՝ նոյնպէս յԱթէնս, ի յոյն և յասորի դպրութիւն։ Փարպեցին գանգատելով կը յիշէ հայ պատանեկաց յաճախելն յԱսորիս յուսումն այն լեզուին, և ուրախ է որ Հայք գիւտիւ գրոյն ազատեցան ի տանջանաց ասորի լեզուոյն.—«Հոգացեալ յարաժամ տրտմէր երանելի այրն Մաշթոց, տեսանելով զմեծաջան ծախս մանկանցն Հայաստան աշխարհիս, որք բազում թոշակօք և հեռագնաց ճանապարհօք և բազմաժամանակեայ դեգերմամբք մաշէին զաւուրս իւրեանց ի դպրոցս ասորի գիտութեան» (Փարպ. ծ.). և սակաւ մի յետոյ. «Ամենայն անձն փափաքէր յուսումն հայերէն գիտութեան. որպէս ի խաւարէ՝ յասորի տանջանացն զերծեալք ի լոյս՝ խնդայէին» (Անդ)։ Իսկ զերթալն Հայոց յԱթէնս առ իւրով ժամանակաւ (այն է ի միջոցի Դ. դարուն) կը յիշէ Գրիգոր Աստուածաբան որ և Նազիանզացի ի ճառին զԲարսղէ (եթէ նորա է այն ճառ). «Յորժամ յԱթէնս էի, ասէ, ի մանկութեան՝ եկն անդր և Բարսեղ, ընդ որում կապեալ էի սիրով վասն բարուցն ազնուութեան և հանճարեղ մտացն, փոյթ յանձին կալայ վաղվաղակի բարձրացուցանել զնա։ Էին անդ և ոմանք ի Հայոց յուսումն դպրու-

թեան, որք և կանխաւ ծանօթ էին Բարսղի ի տղայութենէ. որոց և տեսեալ զնա յառաջադէմ և սիրելի յաչս ամենեցուն՝ Նախանձէին իմն, զի գչարէին թէ ինքեանք որ վաղագոյն մտեալ էին յուսումն փիլիսոփայութեան՝ թերևս խոնարհագոյն քան զԲարսեղ գտանիցին որ այն ինչ եկեալ էր, վասնորոյ և խստիւ վիճէին ընդ նմա. Նա՝ ի միում Նուագի մօտ ի յաղթահարել իսկ էին զնա և զընկերս նորա, մինչև աՀ արկանել նոցա և ընկճել։ Իմ տեսեալ զայս՝ զդէմ կալայ նոցա. Նախ զերկոցունց կողմանց զպայքարն Հաւասար երևեցուցեալ՝ անյայտ զյաղթութիւնն թողի. ապա միւս անգամ Նորոգեալ զպայքարն՝ կացի ջատագով Բարսղի։ Այսպէս զօրացեալ նոքա ազգի ազգի Հաւանութեամբք՝ յաղթէր մանկանցն այնոցիկ քաջաց, վասնորոյ սկսանէին նոքա ընդ ակամբ իմն Հայել ի մեզ»։ Վանական վարդապետ, մատենագիր ԺԳ. դարու, կը յիշէ Նազիանզացւոյն ճառը. «Օրէն էր, ասէ, ուսանել յԱթէնս լռու կալով և ի Հնազանդութեան. այլ զմերոցն ամբաստանէին, թէ սակաւ ուսանէին և խօսելով ընդ երկար ընդդիմանային։ Զայս Աստուածաբանն Հուշակեցոյց ի Բարսղի արձանականին»։ Վանական, ըստ Զամչեանի, կը յաւելու պատմութիւն ինչ առասպելական, ինչպէս սովորութիւն է յետին մատենագրաց, թէ ինչ աղբերէ՝ չէ յայտ. «Նախանձ, ասէ, ի վաղուց Հետէ կայր ի մէջ Յունաց և Հայոց, և յայտնի ի Բարսղի արձանականէն է. և պատճառ զայս իմացաք, զի սաՀմանակից է նոցա Հայոց աշխարՀն և սրբութեամբ աւելի, և շատ ինչ յիշատակ քաջութեան գրով ունին և քան զայլ ազգս սեպՀական լեզուաւ։ Բիծս ինչ իմացեալ երբեմն Հայ աշակերտաց ի վարս վարդապետին իւրեանց՝ յերեսսն Հանին, և նա յառաջագոյն ետ նկարել զպատկերս նոցա, և ապա յարոյց զքաղաքն ի վերայ նոցա, և Հանին (Յոյնք) զնոսա արտաքս։ Նոքա երթեալ ի Միջագետս Ասորւոց՝ ուսան գիր և լեզու, յամեալք անդ մինչև ի գալ Հաւասարել Հերացն և մօրուաց, ապա ամենևին ասորի ձևացեալ՝ մտին անդրէն յԱթէնս. զոր իմացեալ Հանին վերստին, օրէնս եդեալ, Հայի մի ումեք մտանել անդր։ Եւ զի նախանձ և Հեռ ուր մտանէ, քակէ՝ աւերեալ բարձաւ անդ ուսումն և արուեստ»։ Եթէ չունենայինք ևս վկայութիւն արտաքուստ՝ թարգմանութիւնքն ի սկզբան գիւտի գրոյն ի յունէ և յասորւոյն այնպէս արագ և այնպէս ընտիր, նաև կազմութիւն իսկ լեզուին բաւական էին ինքնին ցուցնել, թէ ուսեալ մասն մի ազգէն, թերևս ի ժամանակէ անտի Հեթանոսութեան, բայց մանաւանդ յետ քրիստոնէութեան՝ Հմուտ էր աւելի քան զոր մեք կարծեմք՝ դրացի ազգաց լեզուներուն, յունին ևս առաւել։ Չէ սակաւ զարմանալի ասելն Պլուտարքոսի զԱրտաւազ

գալ առաջնոյ, թէ յօրինէր վէպս և երգս ի յոյն լեզու, թէպէտ չենք գիտեր, թէ մինչև ո՛ւր աստիճան ստուգութիւն ունի այս պատմութիւն Պլուտարքոսի. ըստ մեզ չէ ամենևին անհաւանական։ Վկայեալ է Պարթև թագաւորաց հելլենասիրութիւնն և յունական կրթութիւնը. և մեր յայնժամու թագաւորք մանաւանդ չկարէին լինել խոնարհագոյն քան զՊարթևս։ Որպէս նոցայն՝ նոյնպէս և մեր արքայազուն իշխանք կը կրթուէին իբրև պատանդ առ Յոյնս և առ Հռոմայեցիս։

**19.** Հաւանական է թէ թարգմանիչք, զորս յիշեցաք յանուանէ ըստ վկայութեան Կորեան՝ ունէին և այլ գործակիցներ. բայց թէ սոքա էին առաջին աշակերտք, և յետ սոցա միւս ևս երկրորդ խումբ, իբրև երկրորդ թարգմանիչք, ղրկուեցան յԱղեքսանդրիա և յԱթէնս յուսումն արտաքին գիտութեանց՝ գիւտ է արդեաց։ Այս կարծեաց աւիթ տուած է Խորենացւոյն պատմութեան ԿԱ. գլխոյն վերջին մասն, ուր հեղինակն յետ պատմելոյ, թէ Սահակ և Մեսրոպ «դարձեալ թարգմանեցին զմիանգամ թարգմանեալն փութանակի» ըստ ստուգագոյն օրինակաց բերելոց ի Կոստանդնուպոլսէ՝ կը յաւելու. «Բայց քանզի *անգէտք էին մերում արուեստի՝ ի բազում մասանց թերացեալ գործն գտանէր.* վասնորոյ առեալ մեծերն Սահակայ և Մեսրոպայ զմեզ առաքեցին յԱղեքսանդրիա ի լեզու պանծալի, ի ստոյգ յօդանալ ճեմարանին վերաբանութեան»։ Յաջորդ գլխով (ԿԲ.) կը պատմուի այս առաքման ճանապարհորդութիւնը, որ և կ՚ակնարկուի յՈղբսն որ յանուն Խորենացւոյն։ Ս. Գրոց թարգմանութեան կարծեցեալ թերակատարութիւնք, և առաքումն Խորենացւոյն (ընդ որում յետին մատենագիրք կը կցեն ուրիշ շատեր այլ ընդ այլոյ պատմութեամբք) յԱղեքսանդրիա յուսումն առ ի լնուլ այն թերակատարութիւնը՝ մեր գրագիտութեան պատմութեան մէջ առեղծուած է, զոր պիտի ջանանք լուծել ըստ կարի։

Կորեան պատմութենէն, ինչպէս տեսանք՝ իբր հինգ անձինք Մեսրոպայ աշակերտներէն, Յովսէփ, Յոհան, Եզնիկ, Կորիւն, Ղևոնդ, յորս կը յաւելու Խորենացին նաև Արձան ոմն՝ ղրկուեցան յԵդեսիա և ի Կոստանդնուպոլիս ի թարգմանութիւն։ Յետինք ոմանք կը յարեն ի սոսա խառնիխուռն ուրիշներ յաշակերտաց Մեսրոպայ, ինչպէս Տիրայր, Մուշէ, Ենովք, Դանան, Գնիթ, այլովքն հանդերձ, որք յիշել կը յիշուին ի Կորենէ իբրև աշակերտ, բայց ոչ իբրև թարգմանիչ, այլ իբրև եպիսկոպոս կամ վերակացու կարգեալ յայլևայլ տեղիս ի գործ հոգևոր մշակութեան։ Այսչափ ևս բաւական չհամարելով՝ յետինք կը յաւելուն նաև զայլս իբրև աշակերտ

Մեսրոպայ և թարգմանիչ, թէպէտ սոքա չեն յիշուիր ոչ ի Կորենէ և աչ ի Խորենացւոյն, այլ ոմանք են ծանօթ յազգին իբրև մատենագիր, ինչպէս Խորենացին, Եղիշէ, Մամբրէ, Դաւիթ Անյաղթ, Մանդակունին, Գիւտ, Ղազար Փարպեցի, և այլք ոմանք անծանօթք և՛ ժամանակաւ և՛ գործով, ինչպէս Սահակ ոմն, Յովհաննէս, Աբրահամ կամ Աբէլ, Անանիա, Յովնաթան, Եզրաս Անգեղացի, Ղազարիկ, Խաչիկ կամ Խաչատուր, Անդրէաս, Թաթուլ, Վարոս, և կը համարին զսոսա զամենեսին իբրև թարգմանիչս ղըրկուած ի Սահակայ և ի Մեսրոպայ, և յետ բազում ամաց դարձած ի Հայրենիս։

Չամչեան իւր պատմութեան առաջին հատորին մէջ խօսելով թարգմանչաց աշակերտներուն վրայ՝ կը բերէ յետին մատենագրաց, ինչպէս Յայսմաւուրաց, Շնորհալւոյն, Ասողկայ, Սամուէլի, Կիրակոսի, Ստեփանոսի Ուռպելեանց, Վարդանայ, Թովմայի Մեծոբեցւոյ, Զահկեցւոյն և ուրիշ յետին մատենագրաց հակասական պատմութիւնները, զորս կը գտնենք հոս. «Էին երևելիք և գլխաւորք յաշակերտաց նոցա (Սահակայ և Մեսրոպայ) այսոքիկ. Սուրբն Յովսէփ և սուրբն Ղևոնդ երէց որ ի Պարսս վկայեցին, սուրբն Եղիշէ վարդապետն, և Մովսէս Խորենացի, և եղբայրն Մովսեսի Մամբրէ Վերծանող, և Եզնակ Կողբացին, և Ստեփանոս Ասողիկ, Խոսրով և Ղազար պատմագիր, Արձան և Կորիւն և Դաւիթ Անյաղթ փիլիսոփայ, ընդ որս և այլք բազումք» (Յայսմ. սեպտ. 17). և այլուր (նոյ. 25). Սուրբն Սահակ և Մեսրոպ «առաքեցին մանկունս յԱթէնս ի մայրն իմաստութեան, զՄովսէս Խորենացին, որ ասի թէ քուերորդի էր Մեսրոպայ, և զԴաւիթ Ներքինացի, որ եղև անյաղթ փիլիսոփայ, զԵզնակ Կողբացին և զՄամբրէ Վերծանող, զՂազար Փարպեցին, և զՍտեփանոս Ասողնիկն պատմագիր, և զայլ աշակերտսն»։ Դարձեալ (փետր. 19). «Եւ յետ փոխման սրբոյն (Մեսրոպայ և Սահակայ) եկին աշակերտքն նոցա յԱթենայ՝ ճոխացեալ և փարթամացեալ ուսմամբ. Մովսէս քերթողն և Դաւիթ անյաղթ փիլիսոփայն, Մամբրէ Վերծանողն, Եղիշէ պատմագիրն, Ղազար Փարպեցի և Եզնակ և (Ստեփանոս) Ասողիկ, և այլ ոմանք»։ «Մանկունս ուշիմըս ժողովեալ—նոր դըպրութեամբ այնու վարժեալ—որք թարգմանիչ հոգւոյն եղեալ—ըստ Պըտղոմեայ ի նոյն շարժեալ—յԱթենացւոց քաղաքն երթեալ—զիմաստութեան ծաղիկս առեալ—որպէս մեղու թեւօք բարձեալ—յեկեղեցիս Հայոց բերեալ—այս է Մովսէս Դաւթիւ եղեալ—և Մամբրէիւ այլք հետևեալ» (Շնորհ. Վիպաս.)։ Հեղինակն յառաջաբանի Բարձրացուցէքին, ոչ միայն Դաւթի Անյաղթի հետ ղըրկուած կը գնէ յԱղեքսանդրիա և յԱթէնս «զՄամբրէ եղբայրն Մով-

սիսի, զՄուշէ, զԵղիշէ, զԵզնակ, զԱրձան Արծրունի և զԱղան՝ այլև զդարձ նոցա կը դնէ կաթողիկոսութեան բաժանման ժամանակ, իբր 600-ին, այսինքն 160 ամօք յետոյ քան զմահն Սահակայ և Մեսրոպայ.—«Դաւիթ փիլիսոփայ ասացեալ, ի Հարք գաւառէ ի Հերեթն գեղջէ, աշակերտ Սահակայ և Մեսրոպայ, զոր ասեն քուերորդի Մովսիսի քերթողահօրն, ի վաթսնիցն որք ընտրեցան ուշեղք և փափկաձայն և երկարոգիք, և ամենայն առաքինութեամբ զարդարեալք. որք յետ հարիւր մետասան ամի սրբոյն Գրիգորի ի գտանել գրոյ ազգիս ընտրեցան, և չոքան յազգս ուսանել իմաստասիրութիւն և արուեստախօսութիւն և առնել թարգմանութիւն, յԱղեքսանդրիա և յԱթէնս և յայլ գաւառս։ Եւ որք ընդ նմա գնացին՝ Մամբրէ եղբայրն Մովսիսի, Մուշէ և Եղիշէ, Եզնակ և Արձան Արծրունի և Աղան։ Եւ ի դառնալն, զի բազում ժամանակք էին անցեալ, և յոլով անցք անցեալ ընդ երկիրս, ընկենուլ զսուրբն Սահակ յաթոռոյն, և սպանանել Արտաշրի ի Սուրմակ քահանային ի սադրելոյ, և Ասորւոց առաջնորդ կացուցանելն, և յետ քսան և ութ ամի գիւտի գրոյն կոտորումն սրբոց Վարդանանց, և բաժանումն հայրապետութեանն յերկուս, Յովհան Մանդակունի ի Պարսից կողման կաթողիկոս, և Գիւտ ի կողմանս Յունաց, յաշակերտաց սրբոց քահանայիցն»։ Ասողիկ կը դնէ այս դարձն առ Մանդակունեաւ, իբր 40 տարի յետոյ քան զմահն Սահակայ.—«Յայսմ ժամանակի (առ Մանդակունեաւ) Մամբրէ եղբայր Մովսիսի, զորմէ ասեն երրորդ գտեալ ի փիլիսոփայս՝ դառնայր ի Հայս»։ Սամուէլ երէց կը դնէ առ Ներսիսիւ Աշտարակեցւով, այսինքն իբր 90 ամօք յետոյ քան զմահն Սահակայ.—«Մամբրէ եղբայր Մովսիսի դառնայր ի Հայս, զորմէ ասեն երրորդ գրել փիլիսոփոս»։ Նոյնպէս Կիրակոս, առնլով ի Սամուէլէ։

Նոյնչափ հակասական են տեղեկութիւնք յետնոց առանձինն զԽորենացւոյն, զԴաւթէ Անյաղթէ և զայլոց։ Մաշտոցի կարգադրութեան հին յիշատակարանաց մէջ, ըստ Չամչեանի, կը յիշուի իբրև քարտուղար Սահակայ Պարթևի Մովսէս ոմն թարգմանիչ, որ որպէս թէ հրամանաւ Սահակայ և Մեսրոպայ կարգաւորեց Մաշտոցը «յերրորդ ամի թարգմանութեան սրբոյն Մեսրոպայ (այսինքն գիւտի գրոյն), և ի ԻԱ. ամի հայրապետութեան սրբոյն Սահակայ, յետ ՃԺԱ. ամի լուսաւորութեան սրբոյն Գրիգորի, այն է դարձին Հայոց»։ Չամչեան հաշուելով այս երեք թուականներն՝ կը գտնէ Մաշտոցին կարգաւորութիւնը կատարուած ըստ յիշատակարանին՝ յամին 410 կամ 411, ուստի յիշատակարանին Մովսէսը չգտներ նոյն ընդ Մովսիսի Խորենացւոյ, զոր այն թուականին (410 կամ 411) կը հա-

մարթ այն ինչ ծնեալ։ Զամչեան պարտէր մանաւանդ մերժել յիշատակարանին տեղեկութիւնն իբրև ոչ պատմական, քանզի Մաշտոց կոչուած ծիսարանին գոյութիւնը բազմօք յետոյ է քան զՍահակ և զՄեսրոպ, առ որովք Հայաստանեայց եկեղեցին կը վարուէր գեւյոյն լեզուաւ և ծիսիւ։

Զամչեան յիշելով ուրիշ վկայութիւն, այն է Գրիգոր անուն սարկաւագապետի ուրուք որպէս թէ վեցերորդ դարու մէջ յԵրուսաղէմ խօսած ճառն, ուր Մովսէս Խորենացի կոչուած է քարտուղար ոչ Սահակայ Պարթևի, այլ Սահակայ Բագրատունւոյ՝ զայն ևս կը համարի անվաւեր։ Ըստ մեզ՝ նոյն իսկ ճառն համարելի է անվաւեր, յետին դարուց խաբեբայի ուրուք գործ, և ոչ վեցերորդ դարու Գրիգոր անուն սարկաւագապետի, եթէ երբէք եղած է այնպիսի անձն վեցերորդ դարու մէջ։ Ըստ Ստեփաննոսի Ուռպելեանց (մատենագիր ԺԳ. դարու), «Մովսէս քերթող (Խորենացին) էր գտաւոր հայրապետանոցին» Քաղկեդոնի ժողովին ժամանակ։ Զամչեան կը մերժէ և զայս, և է արդարև մերժելի։ Ըստ Յայսմաւուրաց (փետր. 19), ի շինութեան Թէոդուպոլսի (Կարնոյ) «էր վերակացու գործաւորացն և խրատտու շինուածոցն Մովսէս Խորենացի, քեռորդի Մեսրոպայ վարդապետի»։ Զայս կը յիշէ և Յակոբ Նալեան, համարելով գործակից Մովսիսի և զԴաւիթ Անյաղթ։ Զամչեան իբրև «ամենևին անհիմն» կը մերժէ այս ամէնը։ Եւս աւելի այլանդակ են տեղեկութիւնք յետնոց Դաւթի Անյաղթի վրայ։ Թող վերագոյն յիշուած կոչումներն Յայսմաւուրաց և այլոց, որ զԴաւիթ կը համարին յաշակերտաց Սահակայ և Մեսրոպայ՝ Արիստակէս գրիչ, մատենագիր ԺԳ. դարու, կը համարի զԴաւիթ «մին ի վաթսնից որք ընտրեցան առաքիլ յԱթէնս», որպէս թէ յԱղեքսանդրիա և յԱթէնս ղրկուած աշակերտք ի Սահակայ և ի Մեսրոպայ՝ էին վաթսուն թուով։ Զամչեան կը բերէ նաև Շնորհալւոյն վկայութիւնը, որ որպէս թէ հին օրինակներու կամ յիշատակարաններու մէջ գտած էր «զԴաւիթ աշակերտեալ մեծին Մովսիսի քերթողի աստուածեղէն Գրոց, ի Հարք գաւառէ ի Հերեթն կամ Հերեան կամ Ներգեն գեղջէ, որդի առն բարեպաշտի և սիրողի Աստուծոյ, մի յայնցանէ որ ընտրեցան յաշակերտութիւն հելլենական դպրութեան ի ժամանակս Վահանայ... և ի հայրապետութեան տեառն Գիւտայ և զկնի՝ Յովհաննու Մանդակունւոյ»։ Չևս այլանդակն ունի Ջահկեցին, որ յետ դնելոյ զԴաւիթ աշակերտ Մովսիսի քերթողի՝ կը յաւելու թէ «աշակերտ Դաւթի եղև Եզնակ Կողբացի, և Եզնակայ աշակերտ եղև Մամբրէ, և Մամբրէի աշակերտ եղև Ղազար Փարպեցի»։

**20.** Որովհետև Բարձրացուցէք-ին հեղինակ համարուած է Դաւիթ Անյաղթ՝ այս ճառին յօրինման վրայ ևս հնարուած են ի յետնոց ոչ սակաւ անհեդեդ պատմութիւններ, զորս յիշելով Շնորհալին՝ ստուգագոյն կը համարի զայն, թէ Դաւիթ գրեց այն ճառն ի խնդրոյ Գիւտայ կաթողիկոսի։ Ահա բանք Շնորհալւոյն. «Աւանդի, թէ սուրբն Սահակ և Մեսրոպ առաքեն յաշակերտաց անտի ի կողմանս Յունաց յուսումն իմաստութեան ի մայրաքաղաքն յԱթէնս. որք ուսեալք և տեղեկացեալք՝ թարգմանիչ եղեն հելլենական լեզուին. զի պարտ էր նախ հմտանալ յամենայն իմաստասիրականս բառից և ոլորակաց, և ապա համարձակել ի թարգմանութիւն։ Զոր ասացին ոմանք, եթէ օրէն էր աթենացւոցն որ վարդապետք էին իմաստութեան՝ հոգ տանելով աշակերտացն զեօթն ամ. և յորժամ կատարեալ լինէր սահման կիտին եդելոյ՝ էր նշանաւոր ինչ տեղի կազմեալ, և որ վարդապետն էր՝ հրամայէր ելանել աշակերտին ի բարձր դիտանոցն և խօսել բանս հաճոյականս ըստ ժամանակին և ըստ պիտոյից լսողացն։ Որով և նոյն ինքն երանելին Դաւիթ, մի յայնցանէ աշակերտացն հասեալ յաստիճան՝ ել եկաց ի վերայ աշտարակին առաջի սրբոյ նշանին. զի յայն վայր կործանեալ կռոցն պատկեր՝ պատուականութիւն Խաչին յառաջանայր ի մէջ Աթենացւոցն. ասեն թէ անդ ասաց (զճառն Բարձրացուցէք) յուրախութիւն լսողացն և ի պատիւ Խաչին։ Իսկ այլք ասեն, եթէ ի դառնալն յԱթենայ ի քաղաքն Կոստանդնուպօլիս՝ ըստ օրինաց յունականացն ընկերակիցք նորա մեծարեցին զնա յաւուր տօնի Խաչվերացին, ի պատուասիրութիւն տօնախմբութեանն է ասացեալ։ Եւ այլք՝ թէ յԵրուսաղէմ առաջի փրկական Խաչին։ Եւ ոմանք՝ յետ դարձին ի Պարսից։ Եւ կէսք՝ ի տեղի ինչ անապատի գրեալ։ Բայց զԻնչ այսպիսի ի ծուփ և ի խնդիր ծախել զժամանակ վարդապետութեան ստայօդ պատմութեան»։ Ապա կը հաստատէ Շնորհալին, թէ «գտի ի հին օրինակս, զի հրամանաւ հայրապետին արարեալ է զայս»։ Կը յաւելու ևս, թէ ի սկզբան այն օրինակին կար այսպիսի ինչ ի բերանոյ Դաւթի ասացեալ. «Զառ ի յԱստուածուստ պատուեալ սըրբոյ քահանայապետիդ ի մեծանձնութենէ ընկալայք զհրամանս», այլովքն հանդերձ։ Դաւթի Անյաղթի գործելուն սկիզբը (Տպագր. Վենետ. 1833) կայ հատուածն այն յիշեալ ի Շնորհալւոյն, թէպէտ տարբեր բանիւք, իբրև պատասխանի թղթոյն Գիւտայ առ Դաւիթ. —«Զառ ի յԱստուածուստ պատուեալ զերիցս երջանկի, զմեծի հայրապետի և զաթոռակալի սրբոյն Գրիգորի, Հայոց մեծաց վերադիտողի զաստուածահրաման խնդիր հարկապահանջութեան եկեղեցական գործառնութեան՝ զոր հրամայեցեր մերում կրտսերութեան»,

այլովքն հանդերձ։ Յայտնի է, թէ օրինակ Շնորհալւոյն էր տարբեր։ Թէպէտ Շնորհալին չյիշեր զանուն հայրապետին, որոյ հրամանաւ ասի գրուած Բարձրացուցէքն՝ ըստ Կիրակոսի այն հայրապետն էր Գիւտ, զորոյ և Նամակն կու տայ Վենետեան տպագրութիւնն գործոց Անյաղթի։ Բարձրացուցէք-ի յառաջաբանին վերջը կայ հատուած, ուր կը պատմուի, թէ ուստի՛ շարժեալ Գիւտ խընդրեց ի Դաւթայ գրել այն ճառը, և պատմութիւնն է այս.—Գիւտայ կաթողիկոսութեան ժամանակ Անտիոքայ կողմէն կու գան ի Հայս երեք արք, որ կը քարոզեն, թէ Մարիամ չէ Աստուածածին, և Խաչն ոչ թէ նշան է փրկարար, այլ գործի պատժելոյ զաւազակս։ Այս միջոցին Դաւիթ և ընկերք նորա կը դառնան ի Հայս, և Գիւտ կ'առաջարկէ Դաւթի գրել այն ճառն յիշեալ հերետիկոսաց դէմ.—«Յաւուրս վերադիտողութեան Հայոց տեառն Գիւտայ եկին արք ոմանք ի նահանգէն Անտիոքայ ի գեղջէն որ կոչի Աւշին, որոց անուանքն Կոստանդին և Պետրոս և Թէոդորէ, խարազնազգեացք, բոկագնացք, պահողք և կեղծաւորք. որք ասէին ոչ գոլ զՄարիամ Աստուածածին, և ոչ զԽաչն Աստուծոյ Խաչ, այլ գողոց պատժարան։ Իբրև լուաւ Գիւտ զգալն Դաւթի և զընկերացն՝ բերկրեցաւ և մխիթարեցաւ յոգի, և գրեաց առ Դաւիթ Նամակ»։ Դաւթի գործերուն Վենետեան տպագրութեան մէջ ի ստորև Դաւթի Նամակին առ Գիւտ կայ նաև այսպիսի ինչ յաւելուած. «Եւ եղև այս ի ժամանակս մարզպանութեան և սպարապետութեան Վահանայ, որդւոյ Մագնեսի, որդւոյ Վարդանայ, կամ որպէս ասեն՝ եղբօր, փորձողք և գիտողք։ Սուտ ասեն զայլ պատճառսն՝ յԱթէնս կամ ի Բիւզանդիա կամ յԵրուսաղէմ կամ յորժամ ի Պարսից դարձաւ Խաչն՝ և խօսեցաւ. իսկ այս առանց կարծեաց է»։ Կայ սակայն անանուն գրուած մը, ուր կը պատմուի, թէ Դաւիթ այն ճառը խօսեցաւ ի Կոստանդնուպոլիս։ Այս անանուն գրուածն, ոչ անծանօթ Շնորհալւոյն, և որմէ նաև հեղինակն Պատմութեան հայերէն դպրութեանց կ'առնու ինչ ինչ իբրև վաւերական՝ յետ յօդելոյ անհամ առասպելներ գրոյն գիւտին, Ս. Գրոց թարգմանութեան, Մովսէսի Խորենացւոյ, Դաւթի Անյաղթի և այլոց վրայ՝ կը յարէ Խաչի ճառին յօրինման պատմութիւնը։ Թէպէտ այսպիսի առասպելեալ պատմութիւններ յիշել անգամ չարժեր, սակայն ցուցնելու համար մեր դպրութեան յետին դարուց գրուածներուն անճահութիւնը՝ քաղենք հոս յիշեալ տետրակին պատմութիւնն համառօտիւ։ «Յայսմ ժամանակի (այսինքն յաւուրս ժողովոյն Եփեսոսի) եղև խնդիր պակասութեան գրոյն Հայոց, զոր ունէին ԻԹ. գիր ի Դանիելէ փիլիսոփայէ ասորւոյ, աշակերտ սրբոյն Գրիգորի։ Իսկ սուրբն Սահակ և Մեսրոպ

բազում աշխատութեամբ պէտս արարին ի լերինս տքնեալ զԽ. տիւ և զԽ. գիշեր։ Եւ լուաւ Տէր աղօթից նոցա, և ի տեսլեան գիշերոյն Հրեշտակ Տեառն էջ յերկնից առ նոսա, և որպէս ի տուընջեան խօսէր ընդ նոսա, և յաման ինչ խեցեղէն մատամբ նկարեալ տայր նոցա գիրս Ն։... Եւ եղև օրն այն մեծ և երևելի ի մէջ ազգին Հայոց։ Եւ լուեալ թագաւորն Թէոդոս յոյժ ուրախանայր, և առաքէր առ սուրբն Սահակ և Մեսրոպ թուղթս վասն թարգմանութեան գրենեացն, զի շուտով արասցեն զթարգմանութիւնն, մինչ ես ի մարմնի իցեմ, զի մի արիոսականքն խառնեսցեն և պղտորեսցեն զբանս աստուածաշունչ Գրոց։ Եւ հրամայեաց թագաւորն Եւթաղեայ ցանկօք փակել տուն առ տուն և վկայութիւն առ վկայութիւն, զի մի ապականեսցեն հերձուածողքն զԳրոց պատուիրանսն։ Եւ հասեալ թուղթն առ սուրբն Սահակ և Մեսրոպ, և խնդիր արարին մանկանցն, և ընտրեցին աշակերտս Խ. մտաւոր և սրագլուխս ի լեզուս հրեղէնս ներկեալ ի շնորհաց Հոգւոյն սրբոյ, և եղեն արք երևելիք։ Եւ յետ աւուրց բազմաց առաքեցին արս Ե. Սահակ և Մեսրոպ առ թագաւորն Թէոդոս, զի թարգմանեսցեն զգրեանսն։ Դաւիթ Անյաղթ, կոչեցեալն փիլիսոփայ, և Մովսէս քերթողահայրն, իմաստասէրն Մամբրէ, և հռետորն Աբրահամ, և սոցին նմանակիցն Պօղոս — առաքեցան ի կայսերական պալատն։ Եւ թագաւորն Թէոդոս յոյժ ուրախ եղև, և փառաւորութեամբ ընկալաւ զնոսա, և զԴաւիթ և զՄովսէս դատաւորս կացոյց ի տանն Հայրապետանոցին. և ի թարգմանութեան ոչ դադարէին. կամեցան հրամանաւ թագաւորին երթալ ի փիլիսոփայական քաղաքն յԱթէնք։ Իսկ թագաւորն խորհուրդ ի մէջ առեալ կամեցաւ շինել քաղաքս երկուս, և զնոսա կացուցանել վերակացու շինուածոյ քաղաքին, զի տեսանէր զնոսա յոյժ իմաստունս և հանճարեղս. և առաքեաց զնոսա ի Հայս շինել զԿարնոյ քաղաք։... Իսկ Մովսէս և Դաւիթ, որպէս զարս քաջս՝ անդադար սկիզբն արարին շինել զքաղաքն Կարնոյ։... Եւ պարապեալ յամենայն գործոց քաղաքին՝ խաղացին գնացին յաշխարհն Յունաց առ թագաւորն Թէոդոս, և լուեալ վասն քաղաքին՝ առաւել քան զառաջինն մեծարէր զնոսա, և հրամանաւ արքունի առաքեաց զնոսա յԱթէնս, և մեծաւ շքեղութեամբ խաղացին գնացին ի փիլիսոփայական քաղաքն Դաւիթ և Մովսէս, Մամբրէ և Պօղոս և Աբրահամ։ Եւ մտեալ յիմաստասիրական քաղաքն Դաւիթն, և տուեալ զթագաւորական մատանին ցվարդապետն իմաստասիրաց, և առեալ ի նոցանէ յոյժ ուրախացան, զի ի վաղուց հետէ սպասէին նոցա գալստեանն, զի համբաւ բազում ելեալ էր վասն նոցա յԱթէնս։... Եւ յետ աւուրց բազմաց գային ի Կապա-

դովկացւոց աշխարհէն վարդապետք Յունաց Գրիգոր, որ կոչեցաւ Աստուածաբան, և Գրիգոր Նիւսացի և Բարսեղ Կեսարացի։ Իբրև կատարեցան ամք ուսման Դաւթի և Մովսիսի, Մամբրէի Վերծանողի և Պօղոսի և Աբրահամու ամք Ե՛ բերէին զնոսա. և էր ի մէջ քաղաքին սիւն մի մեծ և բարձր յոյժ պղնձի, և էր գրեալ թագաւորական բան եօթն թագաւորի։... Եւ ելեալ Դաւիթ ի վերին աստիճանն... և սկսաւ ծագել զլոյս վարդապետութեանն իւրոյ, և բան առ բան զծածկեալ բան թագաւորացն մեկնէր. և ամենեցուն հիացեալ զարհուրեցան, և բերեալ տապար ոսկի զարդարեալ ակամբք և մարգարտօք, և Դաւիթ եդեալ ի վերայ տապարին, և ընկերք ուսման իւրոյ բարձեալ ի վերայ ուսոց և գլխոց, ձայնեալ ի վերայ նորա անուն անյաղթ, որով կոչեցաւ Անյաղթ փիլիսոփայ, և զօրն ամենայն ածին ընդ քաղաքն ի շուրջ ձայնիւ ցնծութեան, սրնգովք և փողովք. և Աստուածաբանն և Նիւսացին հաւանեալ ուսման Դաւթի՝ կացուցին զնա վարդապետ ամենայն Աթենացւոց»։ (Հոս ի հարևանցի կը յիշենք, թէ Գրիգոր Աստուածաբան, Նիւսացին և Բարսեղ էին ի սկզբան Դ. դարու, իբրև հարիւր ամօք յառաջ քան զՍահակ և Մեսրոպ)։ Առասպելաբան հեղինակ տետրակին յետ այլընդայլոյ բանիւք խօսելոյ զժողովոյն Քաղկեդոնի և զՄարկիանոս կայսերէ՝ յառաջ կը տանի Դաւթի և Մովսիսի առասպելն այսպէս. «Յետ այսր անցից ժամանակացս և ահագին կոտորածին լուեալ զդառն համբաւ կսկիծ աղետիցս Դաւիթ և Մովսէս և ոչ հանդուրժեալ՝ կամեցան ելանել յաշխարհն Հայոց, և եկեալ ի Կոստանդնուպոլիս՝ լուան վասն մահուան վարդապետացն Հայոց Սահակայ և Մեսրոպայ։... Եւ լուեալ իմաստասէրք քաղաքին պատմեցին թագաւորին Մարկիանոսի, եթէ Արք երևելիք և փառաւորք ի Հայոց իջին յԱթէնք ի վաղուց հետէ, և այժմ առաքեցան առ մեզ։ Եւ լուեալ թագաւորն ուրախ եղև վասն գալստեանն նոցա, և ասէ ցնոսա. Ընդէ՞ր ոչ եկիք ի ժողովն մեր (Քաղկեդոնի)։ Եւ նոքա ասեն. Ի բազում շփոթմանէ մոռացաք. և մեղադիր եղեն թագաւորին, եթէ Ընդէ՞ր եղև ժողովն այն առանց մերոյ գալստեան և կոչման։ Եւ Յոբնաղ եպիսկոպոս պալատին ասէր. Վասն զի զձեզ ոչ գիտէաք կենդանիս, այլ մեռեալս։ Մովսէս ասէ. Վասն մեր չկոչելոյս չէ այդ պատճառն, այլ զի կամեցայք ապականել զկանոն սրբոց հարցն։ Եւ ասէ թագաւորն. Ստո՞յգ ապականեցան կանոնք հայրապետացն։ Եւ ասէ Մովսէս. Այո՛, ստոյգ։ Եւ դարձաւ Մովսէս ի Յոբնաղ, և այլայլեցաւ գոյն երեսաց նորա ընդդէմ նորա, և ասէ, Ո՛վ Յոբնաղ. ճանաչե՞ս զիս, զի ես եմ Մովսէս, և սա՝ Դաւիթ, բազմահմուտ գիտութեամբ ԺԲ. ազգաց, և պարծանք Աթենացւոց, և առաւել Հայոց աշխարհին։...

Եւ ասէ թագաւորն. Պատրաստեցին Մովսէս և Դաւիթ խօսել ընդ վարդապետացն մերոց, և այն բաւական է մեզ։ Ասէ Մովսէս. Ցամենայնի պատրաստ եմք ամենայն արուեստից։ Եւ առ վաղիւն եկին առ թագաւորն. եկին և իմաստասէրք պալատին։ Եւ հարկեցին զՑոքնադ խօսել ընդ Մովսիսի քերթողահօրն։ Հիացաւ թագաւորն Մարկիանոս և ամենայն իմաստասիրական ժողովն, զի տեսին զնոսա (զՄովսէս և զԴաւիթ) անպարտելի և անսասանելի։ Մովսէս և Դաւիթ կարկեցին զնոցա զանհրասանակ լեզուսն. որք ափ ի բերան եղեալ՝ առաջի ոչինչ կարացին խօսել։ Իսկ նոցա երկիր պագեալ երեսաց թագաւորին յանդիման մեծ աթոռոյն, և թագաւորն բարեբանեալ զնոսա մեծաւ գովութեամբ՝ ասէ. Մեծ ես, ով Մովսէս, և երանի աշխարհին Հայոց ի տեսանել զսուրբ կերպարանս այեաց քոց։ Աւետիս մատուցանէ արևմուտք արևելեան աշխարհին, կարօտիւ ողջունեն զձեզ եկեղեցիք սրբոց։ Թագաւորն հրամայեաց ի բաց գնալ ժողովոյն և շնորհակալ լինէր Դաւթի և Մովսիսի, որ սկսան ի թարգմանութիւնս գրոց անդադար, ոչինչ համարելով զտկարութիւն, այլև ի բաց եդեալ զծերութիւնն։ Թագաւորն յաւուրս տօնի սրբոյ Խաչին հարկեաց զմեծ փիլիսոփոսն Դաւիթ խօսել զքանս շնորհաց ի պատիւ սրբոյ Խաչին. և Մովսէս մեծարէր զԴաւիթ, զի խօսեսցի բանս ինչ։ Եւ Դաւիթ կամեցաւ կատարել զհրամանս թագաւորին. ելեալ ի վերայ բարձր ամբիոնին, յանդիման երեսաց սրբոյ սեղանոյն, և քահանայքն բարձեալ զնշանն տէրունական։ Եւ Դաւիթ համբարձեալ զձեռս իւր խաչանման, կնքեալ նշանաւ Խաչին՝ ասէր այսպէս. «Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր, մարգարէն ձայնէ, երկրպագեցէք պատուանդանի սրբոյ ոտից նորա, և ես զնոյն ձայնեմ ընդ հոգւոյն», և որ ի կարգին։ Եւ հրաշաբան շարակարգեաց զգովասանութիւն սրբոյ Խաչին, և երկրպագեալ թագաւորին և ամենայն ժողովոյն՝ էջ յամբիոնէն. և առհասարակ ժողովն գովէին և բարեբանէին զԴաւիթ և ձայնէին Անյաղթ փիլիսոփայ» (Հնոց և Նորոց. Պատմութիւն վասն Դաւթի և Մովսիսի Խորենացւոյ. Հրատարակեց Գարեգ. Վ. Սրուանձտ. Կոստ. 1874)։

Խորենացւոյն և Դաւթի Անյաղթի անձին և գրուածոց վրայ պիտի խօսինք յետոյ. հոս բաւական է սաչափ միայն ասել, թէ ինչ որ բերինք անանուն տետրակէն այս երկու անձանց վրայ՝ է զուտ առասպել, իսկ Բարձրացուցէքն ոչ թէ գործ է Անյաղթ փիլիսոփայի՝ այլ յետին գործ տգէտ իմաստակի անհեդեդ ոճով և լեզուաւ։

Իսկ զՍտեփանոսէ Սիւնեցւոյ, զոր Ցայսմաւուրք, ինչպէս տե-

սանք վերագոյնն, կը յիշեն իբրև աշակերտ Սահակայ և Մեսրոպայ՝ Կիրակոս կը գրէ այսպէս. «Արձան, Խոսրով, Ղազար և Ստեփանոս Սիւնեաց եպիսկոպոս, որ եթող բազում մեկնութիւնս Ս. Գրոց, Յոբայ և Աւետարանաց, այլև Դանիելի և Եզեկիելի, և պատասխանիս թղթոյն Գերմանոսի պատրիարքին Կոստանդնուպոլսոյ»: Թովմաս Մեծոփեցի կը շփոթէ զսա ընդ Ստեփանոսի Ասողկայ և կը դասէ ընդ թարգմանիչս: «Փոքր մի սոցին նման, ասէ Չամչեան, գրէ Ջահկեցին ի Գլ. Բ. էջ 624 և 625, ուր ընդ աշակերտսն թուելով զայս Ստեփանոս՝ յաւելու ասել, թէ էր նա աշակերտ Մովսէսի քերթողահօր, և զամենայն շարականս զորս արարեալ է Խորենացին՝ սմա տայ, և տյլուր այլոց, և զգրութիւն թղթոյն առ Գերմանոս սորա համարի»: Չամչեան տեսնելով շփոթութիւն ի պատմութեան սոցա՝ կը դնէ երկու Ստեփանոս Սիւնեցի, զմին աշակերտ թարգմանչաց, և զմիւսն յաւուրս Յովհաննու Իմաստասիրի, և կը յաւելու. «Յայսմաւուրքն և Կիրակոս և այլք ոմանք յետինք խառնեալ զսոսա ընդ միմեանս՝ զգործս երկրորդին տան առաջնոյն, և զգործս առաջնոյն տան երկրորդին: Եւ զի Ստեփանոս պատմաբանն երևելի եղև, որ և մականուամբ Ասողիկ կամ Ասողնիկ կոչեցաւ՝ զայս մականունն նորա տան առաջնոյն և կոչեն Ասողնիկ, որ է յայտնի սխալ»: Յետին դարուց ազէտ պատմիչներէ ինչ աւելի կրնար սպասուիլ՝ եթէ ոչ սխալ: Ստեփանոս Սիւնեցի, իբրև արդարև պատմական անձն՝ է այն որ ծաղկեցաւ ի վերջ կոյս Է. դարուն կամ ի սկզբան Ը-ին, և ունի այլևայլ թարգմանութիւններ և գրուածներ Սիւնեաց դպրոցին ոճով:

Որովհետև, ինչպէս տեսանք, յետին մատենագիրք մեկնելով այլընդայլոյ զբանս ինչ Խորենացւոյն, կը գնեն խառնիխուռն իբր վաթսուն աշակերտ ղրկուած ի Սահակայ և ի Մեսրոպայ յԱղեքսանդրիա և յԱթէնս, յօդելով զնոցանէ այլևայլ անտեղի պատմութիւններ, մինչ Կորիւն ժամանակակից կը պատմէ ղրկուած հինգ աշակերտ միայն—Յովսէփ, Յոհան, Եզնիկ, Կորիւն, Ղևոնդ, նախ ոմանք յԵդեսիա, ապա ամենքին ի Կոստանդնուպոլիս իսկ և իսկ յետ գիւտի նշանագրաց, և Խորենացին յետ թարգմանութեան Գրոց ասէ զանձնէ առաքեալ յԱղեքսանդրիա՝—Չամչեան այս երկու պատմչաց և յետնոց պատմութիւններուն մէջ չգտնելով համաձայնութիւն՝ կը ջանայ միաբանել զնոսա այլևայլ ենթադրութիւններով. նախ (Հտ. Ա. էջ. 775)՝ ասէ. «Յայսոսիկ բանս Խորենացւոյն հայեցեալ, միանգամայն և ի բանս Շնորհալւոյն և այլոց՝ ուղիղ թուեցաւ մեզ ասել, թէ ոմանք յաշակերտաց ուսեալ իցեն յԱղեքսանդրիա, և ոմանք յԱթէնս. իսկ եթէ վասն ամենեցուն առացեալ

իցէ այս յոմանց, այսինքն թէ ամենեքին յԱթէնս ուսան՝ կրկնակի մարթ է իմանալ, մի՝ զի ամենեքին ի վերջոյ յԱթենայ դարձան ի Հայս, որպէս գրէ և Խորենացին. և միւս ևս՝ զի որովհետև ամենեքին վարժեալ էին յուսումն Հելլենացւոց՝ վասն այն ի դէպ եղև ասել զնոցանէ՝ մարզեալ յուսումն աթենական։ Այլ թէ յիրաւի գոյր յազգս Հայոց յառաջին կամ յետոյ առաքել մանկունս ի քաղաքն Աթենացւոց՝ յայտ է նաև ի բանից Գրիգորի Աստուածաբանի»։ Հոս կը բերէ Չամչեան Գրիգորի Աստուածաբանի ճառը և զպատմութիւն Վանականին, զորս յիշեցաք վերագոյնն։ Ի վախճանի (էջ 784) կը թուի բոլորովին երկբայել յետնոց պատմութիւններուն վրայ.— «Այլ յաղագս վաթսնից, որք յիշին ի գիրս գրչութեան Արիստակեայ և այլոց ոմանց՝ ասի թէ նոքա յաւուրս Գիւտայ և Յովհաննու Մանդակունւոյ ընտրեալ եղեն և առաքեալ յԱթէնս. այլ թէ որո՞վ օրինակաւ լեալ իցէ այս՝ չունիմք ինչ ստուգիւ ասել. վասն զի յոչինչ մատենագիրս մեր յայտնի պատմութեամբ գտաք զայս, և տարակուսիմք իսկ. զի յայնմ ժամանակի վրդովեալ էր Յունաստան յերեսաց Ատտիղայ, և մանաւանդ գաւառն Ատտիկէ, յորում էր քաղաքն Աթէն։ Մարթ է ասել, թէ գուցէ յայլ կողմանս և կամ ի Կոստանդնուպոլիս առաքեցան յուսումն հելլենական դպրութեան, զոր և մասամբ իւիք յիշէ Շնորհալին ի նախակարգեալ բանսն»։ Չկրնալով սակայն իբրև բոլորովին անհերքելի մերժել յետնոց պատմութիւններն՝ կը դնէ ըստ քմաց բաժանումն իմն ի մէջ աշակերտաց թարգմանչաց այսպէս. «Զկարգ աշակերտաց սրբոյն Սահակայ և Մեսրոպայ մարթ է ի չորս դասս որոշել. մի՝ այնոցիկ, որ էին աշակերտեալ յառաջ քան զգիւտ գրոց, որպիսի էին Յովսէփ Պաղնացի, Յոհան Եկեղեցացի, ևն։ Երկրորդ՝ այնոցիկ, որք յաւուրս գիւտի գրոց աշակերտեցան, որպիսի էին Կորիւն, Արձան, ևն։ Երրորդ՝ այնոցիկ, որ ի ծաղկել անդ դպրոցացն աշակերտեցան, որպիսի էին Խորենացին, Ստեփանոս, ևն։ Չորրորդ՝ այնոցիկ, որք ի յետին աւուրս սրբոց թարգմանչաց աշակերտեալ՝ յետ մահու նոցա առ ոտս երիցագոյն աշակերտաց կամ այլոց ոմանց վարժեցան, յորոց մին համարի Ղազար Փարպեցին։ Բայց մեր չկարելով յայտնի որոշել զիւրաքանչիւրսն՝ զամենայն հետզհետէ կարգեցաք ի պատմութեանս»։ Արդարև Չամչեան իւր պատմութեան առաջին հատորին Բ. դպրութեան Կ. գլխոյն մէջ խօսելով զաշակերտաց սրբոյն Սահակայ և Մեսրոպայ՝ կը դնէ խառնիխուռն աւելի քան երեսուն անձանց անուններն, իբրև աշակերտաց Սահակայ և Մեսրոպայ—1. Յովսէփ ի Վայոց ձորոյ, 2. Յովսէփ Պաղնացի, 3. Յովհան Եկեղեցացի, 4. Ղևոնդ երէց, 5. Աբրահամ, 6. Անանիա, 7. Թադիկ, 8.

Տիրայր կամ Տէր Խորձենացի, 9. Մուշէ Տարօնեցի, 10. Ենովք, 11. Դանան, 12. Յովնաթան, 13. Երեմիա, 14. Արձան Արծրունի, 15. Ընձակ, 16. Խոսրով, 17. Ղազրիկ, 18. Խաչիկ, 19. Անդրէաս, 20. Գիւտ, 21. Յովհան Մանդակունի, 22. Եզնիկ Կողբացի, 23. Կորիւն, 24. Եղիշէ, 25. Մովսէս Խորենացի, 26. Մամբրէ, 27. Ստեփանոս Սիւնեցի, 28. Դաւիթ Անյաղթ, 29. Թաթուլ, 30. Վարոս, 31. Ղազար Փարպեցի։

Չամչեան սոցա իւրաքանչիւրին վրայ յաւելլով համառօտ տեղեկութիւններ մեծաւ մասամբ յետին մատենագիրներէ, ինչպէս յԱսողկայ, ի Վարդանայ, ի Կիրակոսէ, ի Սամուելէ և մանաւանդ ի Յայսմաւուրաց, և գրոց յիշատակարաններէ՝ կը յարէ. «Իսկ վասն այլոց աշակերտաց չունիմք ինչ աւանդեալ ի գիրս, բայց գիտեմք թէ կային և այլք բազումք յոյժ, զորս չեմք բաւական, ասէ Կորիւն, ըստ անուանցն նշանակել»։

Հեղինակն Պատմութեան Հայերէն դպրութեանց յիշելով գրեթէ նոյն անունները՝ կը բաժնէ երկու կարգ, իբրև Առաջին և Երկրորդ աշակերտք։ Առաջին աշակերտներէն էին ըստ յիշեալ հեղինակին— 1. Յովսէփ ի Վայոց ձորոյ 2. Յոհան, 3. Ղևոնդ երէց, 4. Եզնիկ, 5. Կորիւն, 6. Մուշէ Տարօնեցի, 7. Տիրայր, 8. Յովսէփ Պաղնեցի, 9. Յովհան Եկեղեցացի, 10. Ենովք, 11. Դանան, 12. Երեմիա, 13. Թադիկ, 14. Գնիթ, 15. Արձան Արծրունի, 16. Ղազար կամ Ղազարիկ ոմն։ Երկրորդ աշակերտներէն էին—1. Մովսէս Խորենացի, 2. Մամբրէ Վերծանող, 3. Դաւիթ Անյաղթ, 4. Գիւտ կաթողիկոս, 5. Յովհան Մանդակունի, 6. Եղիշէ, 7. Ղազար Փարպեցի, 8. Եզրաս Անգեղացի։ Արտաքոյ սոցա իբրև անորոշ ժամանակաւ դասու՝ կը համարի հեղինակն մեր հետևեալներն—1. Սահակ, 2. Յովհաննէս, 3. Աբրահամ, 4. Անանիա, 5. Յովնաթան, 6. Խաչիկ, 7. Անդրէաս, 8. Թաթուլ, 9. Վարոս։

**21.** Որովհետև, ինչպէս արդէն ակնարկեցինք, թարգմանչաց երկրորդ խմբի մը առաքման առասպելին առիթ տուած է Խորենացւոյն Գ. դպրութեան ԿԱ. գլխոյն վերջին մասն, ընդ որում կապուած է յաջորդ ԿԲ. գլխոյն պատմութիւնը և ակնարկութիւնք ինչ յՈղբսն՝ թողլով յետոյ անհեթեթ վկայութիւնները՝ քննենք ի մօտոյ Խորենացւոյն կամ այս անուամբ ծանօթ պատմութեան այն մասերը։ Նախ բաց այն հատուածէ Խորենացւոյն՝ ոչ ոք ի ժամանակակից պատմչաց—ոչ Կորիւն որ յետ մահուն Սահակայ և Մեսրոպայ գրեց և էր հմուտ և միջամուխ թարգմանութեան գործին, և ոչ Փարպեցին, որ չէր հեռի ժամանակաւ և թարգմանութեան վրայ կը գրէ երկար—կը յիշէ թէ Ս. Գրոց թարգմանութիւնը, որ

եղաւ ի ձեռն Սահակայ և Մեսրոպայ և յետոյ ուղղուեցաւ խնամով ըստ ստուգագոյն օրինակաց դարձեալ ի ձեռն նոյն թարգմանչաց՝ «թերացեալ գտանէր», և այն՝ «ի բազում մասանց»։ Ո՞յք էին այն բազում մասունք, յորս կը թերանային թարգմանիչք. Ս. Գրոց իմաստը, թէ յոյն կամ հայերէն լեզուն։ Աղեքսանդրիոյ մուսէոնին ուսմանց քաջ տեղեկանալն—քանզի կը թուի թէ զայս կը նշանակէ «ստոյգ յօդանալն ճեմարանին վերաբանութեան»—կարծեցեալ թերակատարութեանց ո՞րը կրնար ուղղել, կամ ինչ էր Խորենացւոյն «արուեստը», որում «անգէտ» էին թարգմանիչք. երկրաչափութի՞ւն, թէ աստեղագիտութիւն կամ բնագիտութիւն և կամ այլ գիտութիւն։ Ցետ դարձի Խորենացւոյն յԱղեքսանդրիոյ (եթէ գնաց նա, դնելով թէ կար յայնժամ այնպիսի ոք) չենք գիտեր զնա քաջ հմուտ այն գիտութեանց միոյն. չունինք ստոյգ աւանդութեամբ հաստատուած գրուած յանուն Խորենացւոյ այն գիտութեանց վրայ. գլխաւոր երկասիրութիւն նորա է Հայոց Պատմութիւնն. ըստ ոմանց յետնոց նորա գործ են նաև պատմութիւնք Հռիփսիմեանց և Պատկերին, գիրք Պիտոյից, Աշխարհացոյցն և ճառք ինչ։ Ողբոց մէջ կը գանգատի հեղինակն, թէ կը ծիծաղէին զնովաւ և կ'արհամարհէին զնա՝ «իբրև որ ոչինչ պիտանացու ունիցի արուեստ»։ Ո՞վ կրնար ծաղրել և արհամարհել այնպիսի արուեստ մը, զոր մինչև կը համարձակի կոչել «ամենիմաստ արուեստ և կատարելագոյն յարմարութիւն»։ Այսպիսի անմիտ մեծաբանութիւն անվայել էր Խորենացւոյն (ըստ հասարակաց կարծեաց կ'ըսենք) թէ՛ հանճարոյն և թէ՛ համեստութեանն։ Ուստի բոլորովին անհիմն է ըստ մեզ, թէ ի թարգմանութեան Գրոյն, որ եղաւ ի ձեռն Սահակայ և Մեսրոպայ և աշակերտաց նորա՝ կար թերակատարութիւն, և թէ Խորենացին աւանձին կամ հանդերձ այլովք (եթէ զմեզն առնունք բազմաբար) ղրկուեցաւ ուսանել «ամենիմաստ արուեստ» մը՝ առ ի լնուլ այն արդարև հրաշալի թարգմանութեան թերին. ուստի կը զարմանանք, թէ ուստի՛ և ինչպէս մուտ գտած է Խորենացւոյն Պատմութեան մէջ այն անհեդեդ յօդուածն, մինչև ստիպել մեզ ասել, թէ այն հատուածն (ինչպէս նաև ԿԲ. գլուխն և Ողբք.), եթէ է Խորենացւոյն՝—դնելով, ինչպէս ըսինք, թէ կար ոմն այսու անուամբ ի Ե. դարու—գրուած է կա՛մ ի պատանեկութեան և կա՛մ ի յետին ծերութեան, և կամ, որ աւելի հաւանական է՝ է եկամուտ։

Առնունք քննել արդ ԿԲ. գլուխը, որոյ վերնագիրն է. «Ի վարդապետսն, յինքն և ի ճանապարհորդութիւն ուսմանն, օրինակաւ երկնային զարդու»։ Խորենացին և կամ ո՛ ոք և է հեղինակ այն գլխոյն, նախ կը դնէ համառօտ ինչ իբր թէ աստեղագիտական

տեսութիւն, որ ո՛չ փիլիսոփայական է և ոչ աստուածաբանական, ո՛չ յունական և ոչ քրիստոնէական. որպէս թէ աստեղք ի լուսնոյ կ'առնուն լոյս, լուսին՝ արեգակնէ, և արեգակն՝ եթերային (արփային) երկնէ. եթերին պէս կը հեղու ծագումն յիւրաքանչիւր գօտի, և իւրաքանչիւր գօտի արեգակամբ կը լուսաւորի ըստ դասու, ըստ բերման, ըստ ժամանակի.—«Յարահետեւողք իմաստասիրացն և վերահայեցողք չափաբերապէս մակադրութեանց՝ զաստեղս ի լուսնոյ առեն ընձուիլ, և զլուսինն արեգակամբ ուռճացեալ, և զբոլոր արեգակնն յարփայինն երկնէ. Հիկէն արփւոյն հեղեալ զծագումն յիւրաքանչիւր գօտիսն, և զանցնիւր գօտիքն ի ձեռն արեգականն ընձուլին՝ ըստ դասի, ըստ բերման, ըստ ժամանակի»։ Աստեղագիտական նոր դրութիւն՝ զոր աղեքսանդրացի փիլիսոփայք չունեցան և ոչ իսկ կը հասկնային, ինչպէս մենք չենք հասկնար։ Եթէ այս էր «ամենիմաստ արուեստն», զոր գնաց ուսանել Խորենացին յԱղեքսանդրիա՝ ի զուր յոգնեցաւ։ Եզնիկ շատ տարբեր կը խօսի փիլիսոփայից վարդապետութեան վրայ։ Ահա փիլիսոփայից ուսմա՛ն վրայ բանք Եզնկայ, որ առանց երթալու յԱղեքսանդրիա ուսանել «ի Նոր Պղատոնէն»՝ քան զԽորենացին գէթ աւելի յստակ իմացած է զուսումն նոցա և կ'իմացունէ։ Ըստ Եզնկայ՝ ահա՛ իւր ժամանակին փիլիսոփայից ուսումն լուսաւորաց դրութեան վրայ։ Լուսին երեսուն օրն անգամ մը կը կատարէ իւր շրջանը, արեգակը՝ տարին մի անգամ. հինգ աստեղք միայն, այսինքն մոլորակներ, են գնայուն. մնացեալ աստեղք են անշարժ. գնայուն աստեղք, ինչպէս նաև արեգակն և լուսին, (որ մոլորակ կը համարուէին յայնժամ) կ'երթան յարևմտից յարևելս, թէպէտ մեզ կը թուի թէ յարևելից յարևմուտս կ'երթան. երկինք որչափ վեր են՝ նոյնչափ են ի խոնարհ, և այնչափ շուրջ զերկրաւ։ Լուսին առանձին լոյս չունի, այլ արեգակնէ կու գայ ի նա լոյս, և այս է պատճառ, որ լուսնին այն կողմը միայն կը լուսաւորուի՝ որ արեգական դիմացն է, և որչափ կը մօտենայ արեգական՝ այնչափ կը յաւելու լոյսն, և որչափ կը հեռանայ՝ այնչափ կը նուազի, մինչև բոլորովին կը պակսէ լոյսն. և կը խաւարի արեգակն՝ երբ լուսին կու գայ ճիշդ հանդէպ արեգական.—«Լուսին, ասեն, երեսուն օր անցեալ ընդ ամենայն աստեղատունսն՝ հասանէ ի նոյն տեղի, և արեգակն ի տարւոջ։ Եւ երկինք զմի տիւ և գիշեր առածեալ զինքեամբ՝ շրջին ի նոյն տեղի։ Եւ եւթն աստղ միայն է գնայուն, և այլն ամենայն բևեռեալ են յերկինս. և որ գնայուն աստեղքն են, արեգակն և լուսին և այլ ևս հինգ աստեղք՝ ոչ եթէ յարևելից յարևմուտս գնան, այլ յարևմտից յարևելս։... Եւ երկինք, ասեն, որչափ ի վեր են՝ դոյնչափ ի խոնարհ են, և դոյնչափ յամե-

նոյն կողմանց շուրջ զերկրաւ։... Եւ լուսնի չիք իւր լոյս առանձինն, այլ յարեգակնէ գայ ի նա լոյսն. և յայտ անտի է, ասեն, զի յորմէ կուսէ արեգակն իցէ՝ յայնմ թերէ սկսանի ի նմա լոյս ծնանել, և ըստ հեռաւորութեան արեգականն սակաւ գայ ի նա լոյսն, և ըստ տակաւ տակաւ մերձենալոյն՝ յաճախէ ի նա լոյսն. և յորժամ մօտ հասանէ ի նա՝ լնու, և յորժամ անցանէ զարեգակամբ՝ սկսանի տակաւ նուազել, և որչափ ի բացն հեռանայ՝ այնչափ պակասէ ի նմանէ լոյսն, մինչև ամենևին նուազէ. և յորժամ միւսանգամ հանդիպի՝ ծագէ ի նմա սակաւիկ ինչ ի լուսոյն վասն հեռաւորութեանն, և որչափ մերձենայ՝ այնչափ առ սակաւ սակաւ աճէ ի նա լոյսն։ Եւ լուսին, ասեն, ի ներքոյ է քան զարեգակն և քան զամենայն աստեղս. և քանզի ի ներքոյ է՝ յորժամ կշիռ դէպ արեգական պատահիցէ՝ յայնժամ խաւարի արեգակն» (Եզնիկ)։ Եզնիկ գիտէ նաև Պիւթագորեան, Պերիպատետիկեան, Պղատոնեան, Ստոյիկեան, Եպիկուրեան աղանդոց վարդապետութիւնն ճիշդ ինչպէս մեք գիտենք։ Ապա աշակերտք Սահակայ և Մեսրոպայ, անտարակոյս ինքեանք ևս, արդէն ունէին բաւական տեղեկութիւն յոյն փիլիսոփայից վարդապետութեան, ուստի և չունէին պէտս, մանաւանդ յիմացումն Ս. Գրոց, ղրկել աշակերտներ յԱղեքսանդրիա «ի ստոյգ յօդանալ ճեմարանին վերաբանութեան». մանաւանդ թէ ինչպէս Եզնիկ՝ նոյնպէս վարդապետք նորա կը մերժէին այն աղանդոց ուսումն, իբրև մոլար և հակառակ Ս. Գրոց։

Յետոյ հեղինակն յիշեալ (ԿԲ.) գլխոյն, կ'առնու պատմել իւր ճանապարհորդութիւնը՝ նմանցունելով զայն իւր աստեղագիտական գրութեան։ Այսպէս, ասէ, և մեք հարաւէն դառնալով հասանք յԵգեսիա, և թեթևակի նաւելով դիւանին խորէն՝ եկանք երկրպագել ի սուրբ տեղիս, վայրկեան մը մնացինք ի Պաղեստին ի հրահանգս (թերևս ուսանել եբրայեցերէն), և այնպէս ճեպով մտանք յԵգիպտոս.—«Օրինակ իմն, այսպէս և մեք յաւետախաղաց շնորհիւ ցոլացեալ յիմանալի ճառագայթից հոգևոր հարցն, ըստ հարաւային մասանցն պարայածեալք՝ յԵգեսացւոցն հասանէաք քաղաք, թեթևակի ընդ խորս դիւանին նաւեալ, անցաք ի սուրբ տեղիսն երկրպագել, և մնալ վայրկեան ի Պաղեստինացւոց հրահանգս»։ Արդարև բռնազբօսիկ նմանութիւն։ Կ'երևի թէ հեղինակ մեր ցուցնելու համար, թէ «ոչ անկատար վարժմամբ յանգեալ արուեստից ինքնացաւ»՝ քաշելով բերաւ կապեց իւր հոյակապ արեգակնային գրութիւնը ճանապարհորդութեան հետ։ Ապա յետ նկարագրելոյ զԵգիպտոս և զԱղեքսանդրիա մութ ոճով և ևս աւելի մութ ակնարկութիւններով, և յիշելոյ նոր ոմն Պղատոն իւր վարդապետ,

որում կը ցաւի թէ չգտաւ արժանի աշակերտ, սակայն կը պարծի թէ «ոչ անկատար վարժմամբ յանգեալ արուեստից ինքնացաւ», այսինքն եղաւ կատարեալ յարուեստին՝—կը յաւելու պատմել իւր վերջին ճանապարհորդութիւնն յԱղեքսանդրիոյ մինչև ի Բիւզանդիոն, ուր լսեց իւր վարդապետաց մահը՝ մինչ կը պատրաստուէր ելանել ի Հայս։ Կամելով, ասէ, նաւել Յունաստան՝ հողմոց բռնութեամբ ինկանք յԻտալիա, և ողջունելով սրբոյն Պետրոսի և Պօղոսի գերեզմանն՝ առանց երկար մնալու ի Հռոմ՝ եկանք յԵլլադա, անտի յԱտտիկէ, և սակաւ ինչ մնալով յԱթէնս՝ ի վերջ կոյս ձմերան ելանք ի Բիւզանդիոն, փափաքելով դառնալ ի հայրենիս մեր.—«Նաւել յԵլլադա կամելով՝ յԻտալիա բռնութեամբ անկաք հողմոց, և ողջունեալ ի հանգիստ սրբոյն Պետրոսի և Պաւղոսի, ոչ բազում ի Հռոմայեցւոցն կացեալ քաղաքի, անցանելով ընդ Ելլադա յԱտտիկէ, սակաւ ինչ մնացաք յԱթէնս։ Եւ ի կատարման ձմերայնոյն՝ դէմ եդեալ ի Բիւզանդիոն ելանել, փափաքելով մերոց հայրենեացն» (Խոր. Գ. ԿԲ.)։

**22.** Հոս մեր առջև կ'ելլէ ժամանակագրական խնդիր մը, որոյ լուծումը բաւական է ցուցնել մեզ այս պատմութեան ակարագոյն կողմը։ Ողբին մէջ կը կարդանք. «Մինչ նոքա (Սահակ և Մեսրոպ) *չմերն* յուսային դարձ, և պատուասիրել *հմով* ամենիմաստ արուեստիւս և կատարելագոյն յարմարութեամբս, համայն և *մեք* փութապէս դիմեալք ի Բիւզանդիոյ, յուսայաք հարսանեաց պարել, անվեհեր երագութեամբ կրթեալք, և առագաստի ասել երգս՝ արդ փոխանակ խրախճանութեանն ի վերայ գերեզմանի ողբս ասելով՝ ողորմելի *հառաչեմ*»։ Հոս դիտելի է նախ՝ որ գրողն, յետ ասելոյ բազմաբար, «*չմերն* յուսային դարձ», և «համայն և *մեք* դիմեալք ի Բիւզանդիոյ՝ *յուսայաք*» ա. հ., արուեստը կ'ընծայէ ինքեան միայն, —«պատուասիրել *հմով* ամենիմաստ արուեստիւս և կատարելագոյն յարմարութեամբս»։ Զարմանք. բազումք կը ղրկուին յուսումն, և մին միայն կ'ուսանի արուեստը։ Երկրորդ՝ այն պատմութենէն կը հասկցուի, թէ մինչ Խորենացին (եթէ Խորենացին է գրող) և ընկերք նորա իրենց ճանապարհորդութիւնը կատարելով այն ինչ ելած էին Բիւզանդիոնէ գալ ի Հայս՝ Սահակ և Մեսրոպ մեռան։ Արդ եթէ գտնենք այս կարծեցեալ թարգմանչաց ելից և դարձին թուականներն, և նոցա բացակայութեան հաւանական տարիներն՝ կը տեսնենք թէ այս երկրորդ առաքման աւանդութիւնը զուրկ է հաւանականութենէ, եթէ ոչ բոլորովին սուտ։ Նախ այս առաքման պատճառէն յայտնի է, թէ Խորենացին և ընկերք նորա ղրկուեցան եթէ արդարև ղրկուեցան) յետ ուղղութեան Սահակեան թարգմա-

նութեան ըստ սողոյգ օրինակաց բերելոց ի Կոստանդնուպոլսոյ։ Այս եղաւ, ինչպէս արդէն տեսանք՝ 436-ին, և ուղղութիւնը տևեց Հարկաւ գոնէ երկու տարի. ապա Խորենեանք չէին կրնար մեկնել յառաջ քան 438 կամ 439. իսկ դարձ նոցա եղաւ, ըստ վերոյիշեալ ակնարկութեան՝ Սահակայ և Մեսրոպայ մահուան տարին, որ է 440։ Այս երկու թուականաց, այն է ելից նոցա և դարձին, համեմատութենէն կը հետևի, թէ ճանապարհորդութիւն նոցա տևեց տարի մը կամ տարի ու կէս, և կամ երկու տարի առ առաւելն։ Ճանապարհորդութիւն մը, որ նայելով պարագաներուն, այն է առաջման նպատակին, տեղւոյն մեծ հեռաւորութեան, դարուն հաղորդակցութեան միջոցներուն մեծ դժուարութեան, հազիւ կրնար կատարուիլ 5 կամ 6 տարուան մէջ, դնել տարի մը միայն տևած՝ ապաքէն չէ հաւանական։ Հայաստանէ ելլել, երթալ յԵդեսիա յուսումն, ապա գնալ յԵրուսաղէմ, երկրպագել սուրբ տեղեաց, մնալ ժամանակ մի «ի Պաղեստինացւոց հրահանգս», անտի մտնել յԵգիպտոս, «ոչ անկատար վարժմամբ յանգեալ արուեստից ինքեանց» նոր Պղատոնէ մը, ապա յԵլլադա նաւել կամելով ելնալ յԻտալիա, հարկաւ Իտալիոյ արևելեան ծովեզրը—(քանզի չէ հաւանական թէ հողմոց բռնութիւնը տարաւ զնոսա Սիկիլիոյ բացէն կամ Մեսսինայի վտանգաւոր նեղցէն մինչև Հռոմի նաւահանգիստն յՈստիա անվտանգ)— Իտալիոյ արևելեան եզրէն երթալ մինչև Հռոմ յերկրպագութիւն նշխարացն Պետրոսի և Պօղոսի, մնալ հոն ժամանակ մի, ապա դառնալ—ընդ ծով՝ թէ ընդ ցամաք՝ չէ յայտ—յԵլլադա, անտի յԱտտիկէ, մնալ ժամանակ ինչ յԱթէնս, ապա գալ ի Կոստանդնուպոլիս, և յետ ձմերելոյ անդ ելլել գալ ի հայրենիս իւրեանց ի Հայս՝—ապաքէն չէր մի կամ երկու տարուան գործ։ Զայս խորհելով թերևս հեղինակ յառաջաբանի Խաչի ճառին՝ ասէ. «ի դառնալն բազում ժամանակք անցեալ էին, և յոլով անցք անցեալ ընդ երկիրս». թէպէտ առ անտեղեկութեան ժամանակագրութեան՝ կը դնէ այն դարձը կաթողիկոսութեան բաժանման ժամանակ, այսինքն 600-ին։

**23**. Նառ հաւանական է ուրեմն, թէ ԿԱ. գլխոյն այն վերջին հատուածը և ԿԲ. գլուխն ամբողջ՝ են եկամուտ և անհարազատ։ Անհարազատութեան միւս ևս մեծ նշան է լեզուն, որ ունի Ե. դարուն հելլենաբանութեան տիպը։ Նոյն բան է Ողբին համար, որ նմանութիւն է Գրիգորի Աստուածաբանի ճառին ի Մելիտոս։ Ողբն է արդարև իբրև ի բերանոյ ուրումն աշակերտի Սահակայ և Մեսրոպայ, բայց պատմական ակնարկութիւնք ի նմա կը պատշաճին մանաւանդ առաջնոյ կիսուն Ե. դարուն։ Հեղինակն կը դնէ

Հայոց եկեղեցին երբեք ընկած ընդ իշխանութեամբ անարժան հովիւներու և խանգարուած։ Առաջին և երկրորդ ժամանակներուն երանի կու տայ, քանզի յետ անկման և խանգարման՝ եկաւ կանգնումն և նորոգութիւն։ Առաջին ժամանակով, ինչպէս կ'երևի՝ կ'ակնարկուի ժամանակն յետ Ներսէսի մեծի, երբ Նստան կարգաւ Զաւէն, Շահակ և Ասպուրակէս, որոց յաջորդեց բարւոք ժամանակ Սահակաւ.—«Երանի առաջնոյ և երկրորդի փոփոխմանն, զի էր ինչ ժամանակ հեռանալոյ փեսայէն և փեսաւէրին. և հարսնդ համբերեցեր՝ ողջախոհութեամբ զամուսնութիւն պահելով»։ Երկրորդ ժամանակով կ'ակնարկուի ժամանակն անկման Սահակայ յաթոռոյ, երբ յափշտակեցին աթոռակալութիւնը Սուրմակ, Բրքիշոյ և Շմուէլ, բայց եկեղեցին գտաւ միւսանգամ իւր պայծառութիւնը՝ վերստին հաստատութեամբն Սահակայ, որում յաջորդեցին Մեսրոպ, Յովսէփ, Գիւտ, Յովհան Մանդակունի և այլք, «նոյնազաւակ զուգահարք», այսինքն հարազատ որդիք Սահակայ և Մեսրոպայ.—«Դարձեալ մինչ երբեմն ումն սեղեխաբար յանդգնեալ յարձակեցաւ յանարատ առագաստդ, և հարսնդ ոչ աղտեղացար, թէպէտ և բանութիւնն ըզփեսայն ի բաց վանեաց... սակայն դու և ոչ յայնմ զքեզ ամայի բոլորեցն ցուցեր, զանդրէն քոյոյն յուսալով դարձ հովուակցաւն. ոչ որպէս տայգերբ, այլ իբր նոյնազաւակ զուգահարբ զմանկունսն փայփայեցեր»։ Չերրորդ ժամանակն, որ է իւր ժամանակն՝ կը համարի ողբերգուն առանց ակնկալութեան դարձի.—«Իսկ յերրորդ հեռանալս ոչ է ակնկալութիւն դարձի, լուծեալ է մարմնոյս ընկերուն և գործակցաւն»։ Ուստի կ'ողբայ և՛ ազգը և՛ եկեղեցին.—«Ողբամ զքեզ, Հայոց աշխարհ, ողբամ զքեզ, հանուրց հիւսիսականաց վեհագոյն, զի բարձաւ թագաւոր և քահանայ, խորհրդական և ուսուցող. վրդովեցաւ խաղաղութիւն, արմատացաւ անկարգութիւն, դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն։ Ողորմիմ քեզ, եկեղեցի Հայաստանեայց, խրթնացեալ ի բարեզարդութենէ բեմբին։... Ոչ ևս տեսանեմ զբանաւոր քո հօտ ի վայրի դալարւոջ և առ ջուրս հանգստեան տածեալս, և ոչ ի փարախ հաւաքեալ զգուշանալով ի գայլոց, այլ ցրուեալս անապատաց և գահավիժութեանց»։ Հայոց եկեղեցական պատմութիւնն չտար մեզ բաւական վկայութիւն այսչափ ապականած դնել զեկեղեցին Հայոց առ Սահակաւ, և ոչ առ յաջորդօք նորա մինչև ի Գիւտ և ի Յովհան Մանդակունի, առ որով կը կարծուի գրած Խորենացին զիւր պատմութիւն, եթէ ոչ աւելի յառաջ, ինչպէս կը կարծեցուննեն այն պատմութեան պարագաներն։ Բանք Ողբին, ինչպէս նաև ուրիշ ակնարկութիւնք զորս պիտի տեսնենք՝ կը յարմա-

րին փոքր ի շատէ ժամանակին Եզրի և յաջորդաց նորա (630—660), մինչ պառակտեցան եկեղեցին և ազգը քաղկեդոնական վէճերէ, եղան ժողովներ, որ մերթ կ'ընդունէին այն ժողովը և մերթ կը մերժէին. Մայրագոմեցւոյն անուանեալ հերձուածն. ազգէն մաս մի բաժնուեցաւ եկեղեցիէն դաւանութեամբ և ծիսիւ. Ցոյնք եղան միջամուխ. Հերակլ և յաջորդ նորա Կոստանդ Բ. (610—667) գրեթէ բռնացան եկեղեցւոյն վրայ՝ սպառնալեօք տալով ընդունել Եզրի և յաջորդի նորա Ներսիսի Տինողի ժողովն Քաղկեդոնի։ Զայս (և ոչ Ցազկերտի հալածումը, որ դեռ սկսած չէր Խորենացւոյն ժամանակ, եթէ դնենք զնա Ե. դարուն կիսուն, և ուրիշ հաշուով վաղուց դադրած էր, եթէ դնենք վերջին կիսուն) կը թուի ակնարկել ասելն. «Անտիոքոս բռնադատէ թողուլ զօրէնս հայրենիս, և Մատաթիա ոչ ընդդիմակայէ։ Այժմ մարտք ի ներքուստ և արհաւիրք արտաքուստ. արհաւիրք՝ ի հեթանոսաց, և մարտք՝ ի հերձուածողաց»։ Այս ամենայն յուզմունք կուտան հեղինակին կարծել Հայաստանեայց եկեղեցին ի սպառ խանգարեալ, ուստի և կը գոչէ. «Զարթի՛ր, Երեմիաս, զարթիր և ողբա մարգարէութեամբ՝ որ ինչ թշուառացաքս և որ ինչ թշուառանալոցս եմք. գուշակեա զլառնել հովուաց տգիտաց, որպէս երբեմն Զաքարիաս յԻսրայէլին»։ Նաև քաղաքական արկածք, զորս կը պատմէ եկած ազգին վրայ, ինչպէս «Հէնք եկեալք անհատք ի յոլովից կողմանց, քերփումն տանց և յափշտակութիւն ստացուածոց, կապումն գլխաւորաց և բանտք յայտնեաց, յօտարութիւն վարումն ազատաց և անթիւ նեղութիւնք ռամկաց, առումն քաղաքաց և քանդումն ամրոցաց, աւերումն աւանաց և հրդեհումն շինուածոց»—կը յարմարին առաւելապէս յիշեալ ժամանակին, այն է ժամանակին Եզրի և յաջորդի նորա։ Այսպիսի աղէտք ապաքէն եղան նաև բազմօք յառաջ քան զԷ. դար. բայց այն ամենայն՝ արդիւնք էին ներքին և արտաքին պատերազմաց որ դադարեցան յետոյ. բայց ակնարկութիւնք Ողբին կը նային այն անհնարին աղետից, որ սկսան գալ մեր թշուառ հայրենեաց վրայ յառաջնում կիսուն Է. դարուն, Եզրի և Ներսիսի Տինողի ժամանակ, ի մարզպանութեան Վարազտիրոցայ, Դաւթի Սահառունւոյ և Թէոդորոսի Ռշտունւոյ, ընտիր և բարեպաշտ իշխանաց, ոչ ապստամբաց, գողոց, կծծեաց, յափշտակողաց, աշխարհաւերից, ազտեղասիրաց, և այն՝ յերեսաց դըրացի բարբարոս ազգաց (կարդա Ցովհ. կաթողիկոսի ԺԷ—ԻԱ. գլուխներն, և զՉամչեան, Պատմ. Հյ. գլ. ԾԱ—ԾԴ.), որ ստէպ ասպատակութիւններով այն դարուն մէջ յաւեր և ապականութիւն դարձուցին զբոլոր Ասիա, ես և յերեսաց Յունաց, որքան զբարբարոսս նուազ վիշտ չհասուցին մեզ, մինչ

եկեղեցական և աշխարհական գլուխք ազգին չփոթեալ վարանեալ կը տառապէին։ Ապաքէն բնական էր այնպիսի ժամանակ անկարգութեանց սպրդել կղերին և ժողովրդեան մէջ։ Այսչափ միայն թերևս ճշմարիտ է Ե. դարուն առաջին կիսուն համար այն սոսկալի տագնապներուն ժամանակ, բայց ոչ Ե. դարուն առաջին կիսուն, յորում կը կարծուի գրուած պատմութիւն Խորենացւոյն։ Ի՞նչ կը նշանակէ ուրեմն այն տխուր նկարագիր Ողբին, որ յետ կոչելոյ ազէտ իւր ժամանակին հովիւներն՝ կը յարձակի ամէն կարգի և աստիճանի մարդոց դէմ.—«Զարթի՛ր, Երեմիա, զարթի՛ր և ողբահանդերձ մարգարէութեամբ որ ինչ թշուառացաքս և որ ինչ թըշուառանալոցս եմք. գուշակեա զյառնել հովուաց տգիտաց, որպէս երբեմն Զաքարիաս յԻսրայէլին։ Վարդապետք տխմարք և ընդինքնահաճք, անձամբ առեալ պատիւ և ոչ յԱստուծոյ կոչեցեալ. արծաթով ընտրեալք և ոչ Հոգւով. ոսկեսէրք, նախանձոտք, թողեալ զհեզութիւն, յորում Աստուած բնակէ, գայլք եղեալ՝ զիւրեանց հօտս գիշատելով։ Կրօնաւորք կեղծաւորք, անձնացոյցք, սնափառք, պատուասէրք քան թէ աստուածասէրք։ Վիճակաւորք հպարտք, դատասացք, զրաբանք, ծոյլք, ատեցողք արուեստից և վարդապետական բանից, սիրողք վաճառաց և կատակերգութեանց։ Աշակերտք հեղգ առ ուսումն և փոյթ առ ի վարդապետել, որք նախ քան զուսումն աստուածաբանք։ Ժողովրդականք վէսք, ստահակք, մեծախօսք, անվաստակք, այրեցողք, վընասակարք, փախչողք ի ժառանգութենէ։ Զօրականք անիրաւք, ստապարծք, զինատեացք, ղղերգք, հեշտասէրք, անժուժկալք, կողոպտիչք, համբարոյք աւազակաց։ Իշխանք ապստամբք, գողակիցք գողոց, կծլիք, կծծիք, ժլատք, ագահք, յափշտակողք, աշխարհաւերք, աղտեղասէրք, ծառայիցն համամիտք։ Դատաւորք տմարդիք, սուտք, խաբողք, կաշառառուք, անընտրողք իրաւանց, անհաստատք, հակառակողք։ Եւ բարձումն առհասարակ յամենեցունց սիրոյ և ամօթոյ»։ Ապաքէն Ե. դարու մատենագիր են Կորիւն, Փարպեցին, թերևս և Եղիշէ։ Ո՜րչափ տարբեր է նկարագիր սոցա իւրեանց ժամանակին համար։ Կորիւն գրեթէ չյիշեր իշխան մը՝ օրում չտայ բարեպաշտ, աստուածասէր վերադիրը. իսկ այնպիսի ընդհանուր ապականութեան չիք առ նմա ամենևին նշմարանք։ Եղիշէ գիտենք թէ ինչ հիացմամբ կը խօսի անխտիր ժողովրդեան բարեպաշտութեան վրայ, ոչ արանց միայն, այլ և կանանց. նոյնպէս Փարպեցին։ Այս վերջին երկու պատմիչք զՎասակ միայն իշխանօք իմամբք կը բամբասեն իբրև անօրէն և ուրացող։ Գիտենք սակայն, թէ այս պատմութեան մէջ կը տիրէ կուսակցութեան ոգի, և

պատմիչքն են կղերական կուսակցութենէ. հակառակ կողմէն չունինք ամենևին խօսող։ Կորիւն, որ գրեց իւր մատենիկն եթէ ոչ յետոյ՝ գէթ ոչ բազում ամօք յառաջ քան զպատերազմն Վարդանանց՝ զՎասակ անգամ կը յիշէ մեծ գովեստիւ, իբր «այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց», նպաստող «աւետարանագործ վարդապետութեան», «ծառայեալ (Մեսրոպայ) ըստ Աւետարանին վայելչութեան»։ Չենք կրնար ընդունել, թէ կաթողիկոսունք Հայոց ի Յովսեփայ մինչև Սամուէլ, վերջին կաթողիկոս Ե. դարու, և յետ այնորիկ ևս, նոյն ինքն Եզր և Ներսէս Տինող և այլք՝ էին հովիւք ադէտք, չտածողք զբանաւոր հօտ իւրեանց ի վայրի դոլարուոջ և առջուրս հանգստեան, չհաւաքողք ի փարախ, չզգուշացողք ի գայլոց, այլ ցրուողք անապատաց և գահավիժութեան. ընդ հակառակն գիտենք, թէ կաթողիկոսունք Հայոց (սակաւ բացառութեամբ, և այն՝ անիշխանութեան ժամանակներ, մինչ ազգը կը հեծէր ընդ իշխանութեամբ այլազգի բռնաւորաց) մինչև արդի հայրապետն, որ կը նստի յաթոռ Լուսաւորչին՝ եղած են արժանաւոր հովիւք։ Գիտենք ի սկզբանէ հետէ մեր ազգին թերութիւններն. չենք կրնար ընդունել սակայն, թէ եղաւ երբէք ժամանակ՝ յորում ազգին մէջ ամէն կարգի և պաշտաման մարդիկ էին տէր ամէն մոլութեանց զոր կը շարէ Ողբը։ Կ'ընդունինք թէ անկարգութիւնք սպրդած են ժամանակ ժամանակ յազգն և յեկեղեցին. բայց չենք կրնար ընդունել, թէ Հայաստանեայց եկեղեցւոյ մէջ արմատացաւ անկարգութիւն, դրդուեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ ադիտութեամբ չարափառութիւն։ Մեր Ողբին հեղինակն, յետ դնելոյ զազգն և զեկեղեցին յետին ապականութեան մատնուած՝ կը դնէ գրեթէ ամէն ազգ բնական չարեաց, զորս կը պատմէ եկած ազգին վրայ՝ իբրև պատուհաս աստուածակոյս կողմանէ.—«Եւ ապա յանդիմանութիւն (ապացոյց) այսոցիկ զի՞նչ, եթէ ոչ անտես առնել Աստուծոյ, և տարերց փոփոխել զբնութիւն։ Գարունն երաշտացեալ, ամառն անձրևայոյզ, աշունն ձմեռնացեալ, ձմեռն սաստկասառոյց, մրրկալից, յերկարացեալ. հողմք բքարարք, խորշակաբերք, ախտահաւաքք. ամպք հրընկէցք, կարկտածուք. անձրևք անժամանակք և անպիտանք. օդք դառնաշունչք, եղեմնարկուք. ջրոցն առաւելուլն անօգուտ, և նուազելն անհնարաւոր. երկրի անբերութիւնք պտղոց, և անաճելութիւնք կենդանեաց, այլև սասանմունք և դղրդմունք։ Եւ ի վերայ այսր ամենայնի՝ խռովութիւն յամենայն կողմանց, ըստ այնմ թէ Չիք խաղաղութիւն ամբարշտաց։ Չի թագաւորք տիրեալք խիստք և չարաչարք, բեռինս բառնալով ծանունս և դժուարակիրս, հրամանս տալով անտանելիս. վերակացուք

անհարթարարք, անողորմք. սիրելիք դաւաճանեալք, և թշնամիք զօրացեալք… սովք անբաւք և հիւանդութիւնք և մահք»: Գիտենք թէ քաղաքական թշուառութեանց հետ եկած են ազգին վրայ երբեմն նաև բնական անհարթութիւնք (տես Յովհ. Կաթ. ԼԳ. և ԾԲ. գլուխներն). բայց գիտենք նաև, թէ բնական չարիք յառաջ կու գան բնական պատճառներէ և են տեղական, և չունին գործ մարդոց բարուց և վարուց հետ. միայն կու գան երբեմն մարդոց անհոգութենէն, ինչպէս սովք և ապականիչ ախտք. ուստի բնական անհարթութիւններ ընծայել բարոյական պատճառներու՝ չէ ուղիղ և բանաւոր: Բայց չմոռնանք նաև, թէ այն արտաքոյ կարգի բնական աղէտներն զորս կը շարէ հեղինակ Ողբին՝ միանգամայն և ընդհանուր պատահած չենք գիտեր ի պատմութեան՝ Հայաստանի հողին վրայ Ե. դարուն մէջ: Ուստի նայելով Խորենացւոյն ընծայեալ Ողբին ոգւոյն և պատմական ակնարկութեանց՝ չենք կրնար ընծայել այն Ողբն այն ժամանակին՝ յորում կու տայ զանձնէ գրըւած պատմութիւն Խորենացւոյն: Եթէ ունի Ողբն այն պատմական յարմարութիւն՝ Է. կամ Ը. դարուն առաջին կիսուն միայն կը յարմարի, և է գործ դժգոհ լալականի, որ ընդդէմ կրեալ անարգանաց ինչ զչարեալ՝ այնպէս վատթարացեալ կը տեսնէ և՛ եկեղեցին և՛ ազգը: Մենք, որ ժամանակակից աղբիւրներէ զուրս որևիցէ տեղեկութիւն կը համարինք իբրև անվաւեր կամ անստոյգ՝ այլազգ կը խորհինք թարգմանչաց աշակերտներուն վրայ: Թարգմանչաց ժամանակին մի միայն վաւերական աղբիւր է, առանց երկբայութեան, Կորիւն: Իբրև աշակերտ թարգմանչաց, միանգամայն թարգմանիչ, ծաղկեալ Ե. դարուն կիսուն գիտենք զԿորիւն՝ Խորենացւոյն և մանաւանդ Փարպեցւոյն Պատմութենէն, որ է անտարակոյս գործ երկրորդ կիսոյ Ե. դարուն, ուստի և եթէ ոչ ժամանակակից՝ գէթ մերձաւորագոյն ժամանակաւ թարգմանչաց, ինչպէս պիտի տեսնենք յետոյ: Արդ Խորենացին կը յիշէ զԿորիւն ոչ միայն իբրև աշակերտ, այլև իբրև թարգմանիչ.—«Ապա առեալ Մեսրոպայ և մեծին Սահակայ զնոյն աշակերտս, զՅովսէփ և միւս ընկեր նմին ի Կողբ գեղջէ որում անուն Եզնիկ կոչիւր՝ առաքեն ի Միջագետս ի քաղաքն Եդեսիայ… և ընդ նոսա նախանձեալ ընկերաց իւրեանց աշակերտակցաց, որոց անուանքն Ղևոնդ և Կորիւն կարդային՝ յիւրեանց կամաց երթին առ նոսա ի Բիւզանդիոն» (Խոր. Գ. Կ.): Փարպեցին գիտէ զԿորիւն նաև իբրև մատենագիր վարուց վարդապետին իւրոյ Մեսրոպայ.—«Զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի Պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան, աշակերտի Նորին երանելոյն Մաշթոցի կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց

նորա» (Փարպ. Ժ.). և այլուր (ԺԲ.). «Զոր ծննդեան սրբոյն է ստոյգ գիտողաց և ի Պատմութենէ երանելոյ առն Կորեան հաստատեալ գրեցաք»։ Արդ ի Պատմութեան Կորեան իբրև աշակերտք Սահակայ և Մեսրոպայ կը յիշուին 1. Յոհան Եկեղեցացի, 2. Յովսէփ Պաղնեցի, 3. Եզնիկ, 4. Ղևոնդ, 5. Կորիւն, 6. Յովսէփ ի Վայոց Ձորոյ, 7. Տիրայր Խորձենացի, 8. Մուշէ Տարօնեցի, 9. Անանիա, 10. Գնիթ, 11. Ենովք, 12. Դանան, 13. Երեմիա, 14. Յովնաթան, 15. Թադիկ, 16. միւս ևս Յովսէփ։ Առաջին հինգը միայն կը յիշուին իբրև թարգմանիչ—«իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն». մնացեալքն իբրև եպիսկոպոսունք և տեսուչք այլևայլ վիճակաց։ Ահա՛ աշակերտք Սահակայ և Մեսրոպայ ըստ ժամանակակից պատմութեա՛ն։ Թէ սոքա ամենեքին եղան գործակից վարդապետաց իւրեանց ի թարգմանութեան յետ գիւտի գրոյն՝ չենք գիտեր. հնգին համար միայն կարեմք ասել ստուգութեամբ, թէ էին ոչ միայն աշակերտ, այլև արդեամբ թարգմանիչք։ Յետին ադէտ մատենագրաց անհիմն պատմութիւններն արդարացունելու համար իբրև «ազգային ընդհանուր աւանդութիւն», բաժնել թարգմանչաց աշակերտներն առաջին և երկրորդ կարգ, և զԽորենացին, զԴաւիթ Անյաղթ, զԵղիշէ, զՓարպեցին և զայլս, որոց անուններն չգիտեր ժամանակակից պատմութիւնն, համարել երկրորդ կարգի աշակերտ, հաւասար Եզնկայ և Կորեան՝ ըստ մեզ է բոլորովին կամայական։ Զայս առնել չտար մեզ թոյլ ո՛չ պատմութիւնն, ո՛չ ժամանակագրութիւն և ոչ այն մատենագրաց լեզուն, ինչպէս պիտի տեսնենք։

**24.** Բայց խօսինք նախ մեր լեզուին հնագոյն մնացորդներուն վրայ։ Գրեթէ առանց երկբայութեան է, թէ մեր լեզուին հնագոյն մնացորդներն կ'սկսին յետ գիւտի գրոյն, այն է Ե. դարուն առաջին կիսէն, իբր 425-էն, որ է հաւանական թուական թարգմանութեան Գրոյն։ Եթէ հին վիպասանական հատակտորներն ևս, որ հասած են մեզ, առնունք ի համարի՝ կ'ստիպուինք ընդունել, թէ մատենագրական շարժումն սկսած էր ի մեզ յառաջագոյն քան զգիւտ գրոյն։ Միթէ կը սխալի՞նք եթէ ասեմք, թէ գպրութիւն մեր գլխովին սկսաւ բազմօք յառաջ քան զգիւտ գրոյն։ Վիպասանութեան մնացորդք՝ են ըստ բնութեան արդարև համազգիք ընդ լեզուին թարգմանչաց, ըստ նիւթոյն՝ հաւանականապէս հեթանոսական։ Եթէ հուկ է ընդունել (և արդարև հարկ է), թէ վաղուց կային ի Հայս Եղիականներ և Ոդիսականներ, առ որս կ'ուղարկէ Խորենացին զՄեկենաս իւր—«Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ ի վիպասանացն որ պատմին ի Գողթան», մա-

Նաւանդ թէ ստուգագոյն մասն ի Պատմութեան Խորենացւոյն այն նրբքին աղբիւրներէն է՝ ապա հարկ է դնել ևս, թէ մատենագրութիւնն սկսած էր ի մեզ յառաջ քան զԹարգմանիչս, և անշուշտ կար ազգ ինչ գրոյ, թէպէտ դժուարին և անկատար և հազիւ մատչելի սակաւուց ոմանց ունեւոր մասնէ ազգին։ Ո՛վ որ գիտէ և կ'զգայ տարբերութիւնը, որ կայ ի մէջ Թարգմանչաց լեզուին և լեզուին յաջորդ դարուց՝ չկրնար ընդունել, թէ վիպասանաց հատակոտորք կրտսեր են քան զԹարգմանիչս։ «Թէ քո Տարայի որկորն է՝ մեր Տիրակայ ամբարքն չեն»․ «Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեան Արտաշիսի, տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկան»․ «Արտաւազդայ ոչ գտեալ, քաջի որդւոյն Արտաշիսի, տեղի ապարանից ի հիմնանալն Արտաշատու՝ նա անց գնաց և շինեաց ի մէջ Մարաց զՄարակերտ, որ է ի դաշտին որ անուանեալ կոչի Տարուրայ»․ «Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս, զարտախուր խաւարտ և զտից խաւարծի ի բարձից Արգաւանայ»․ «Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին»․ «Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց գաւառէն, զՔասաղ գետով, եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ, զՔասաղ գետով, կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի»․ «Մինչ դու գնացեր և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս ո՞րպէս թագաւորեմ»․ «Դու յորս հեծցիս յազատ ի վեր Մասիս, զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս․ անդ կացցես և զլոյս մի տեսցես»․ «Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի և զառաւօտն Նաւասարդի, զվազել եղանց և զվազել եղջերուաց․ մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք»․—այս ամենայն հատակոտորք և սոցին նմանք, թէև սակաւք՝ ունին Թարգմանչաց լեզուին տիպը, և չեն և չկարեն լինել ո՛չ Խորենացւոյն և ոչ ուրիշ որևիցէ յետին գրչի գործ։ Այս են աւասիկ մնացորդք մեր հնագոյն մատենագրութեան, որոյ գալն յայս չափ և ի պայման՝ անհնար էր առանց գրոյ։ Ձայներ յօդելու կարողութիւնը, որ մարդուն միայն տրուած է, և որում միայն կ'ընծայուի ըստ արդի լեզուագիտաց (Հովլաք, Լեզուագ․ էջ 37) լեզուի ծագումը՝ ունի ընդ իւր կից գրոյ և դպրութեան հարկը, քանզի այսպէս միայն կարէ լեզուն կալ, զարգանալ և տևել․ այս հարկէն դուրս առանձնաշնորհութիւն չենք կրնար խորհել մեր լեզուին համար՝ տեսնելով զնա այնպէս կատարեալ և բարգաւաճ ի վաղուց։ Արդարև առանց գրոյ և դպրութեան չէր մարթ հայ լեզուին հասանել յայն չափ՝ յորում կը գտնենք զնա իսկ և իսկ ի սկզբան գիւտի Մեսրոպեան նշանագրաց։ Չիք տարակոյս, թէ Սահակ և Մեսրոպ և աշակերտք նոցա ոչ թէ հնարեցին լեզուն, այլ գտան․

ռուք. ոչ միայն յընտանեկան խօսս կամ ի հասարակաց լեզուին, այլ մանաւանդ յերգս վիպասանաց, որ կը թուի թէ էին մի միայն գըրաւոր երկք ժամանակին։ Ինչպէս դժուարին է մեզ գիտել, թէ— քանզի գրեթէ իսպառ կը լռէ պատմութիւնն— ինչ և որպիսի էր այն գիրն՝ նոյնպէս և առաւել դժուարին է կարծել՝ թէ այսպիսի բազմարուեստ լեզու որպիսի է Հայերէնն՝ իբրև դուստր նախալեզուի մը ինքնին զարգանալով եկած է բերանով ժողովրդեան, առանց մասնաւոր աշխատութեան դաս մը մարդոց, կամ թէ է լոկ գաւառաբարբառներու հաւաքածոյ։ Մեր տեսութեան հաւանականութիւնը ցուցնելու համար հարկ չէ ամենևին իջնել մասնաւոր խնդիրներու լեզուին սկզբան և յօրինման եղանակին վրայ, խնդիրներ՝ որ գէթ առայժմ անլուծելի են։ Լուծման ամէն փորձ տղայ է այսպիսի մթութեանց մէջ։

**25.** Մնացորդք մեր հնագոյն լեզուին են այն սակաւք՝ զորս բերինք. բայց Հայերէն ոսկեղէնիկ լեզուին կատարեալ ճաշակը կու տան մեզ թարգմանչաց գործերն, որոց լեզուն, մի ըստ էութեան իբրև անխառն և բուն Հայերէն՝ կ՚ընծայեցունէ չորս ուրոյն ոճ, որ այնպէս կը ճանաչին և կ՚որոշուին իրարմէ՝ ինչպէս ճարտարապետական ոճք, Դորացին և Բիւզանդեանն, Արուայիկն (Արաբականն) և Գոթացին։ Զառաջին ոճն, արու, ջղոտ, բնական, գեղեցիկ՝ առանց սեթևեթի, առատ՝ առանց զեղխութեան, յանկ առ ամենայն նիւթ, լուրջ վարդապետականէն մինչև ի զուարթ վիպասանականն, դիւրին ի նմանել՝ կու տան մեզ թարգմանութիւնք գրեթէ ամբողջ Հին և Նոր Կտակարանաց (բաց ի գրոց Յայտնութեան, որ յետին ժամանակի թարգմանութիւն է ստորին լեզուաւ), մեկնութեան Ոսկեբերանի ի Մատթէոս, ի թուղթսն Պօղոսի, ի գիրս Ծնընդոց և Եսայեայ, ճառիցն Սեբերիանոսի, Կիւրղի Աղեքսանդրացւոյ մեկնութեան Ծննդոց և Դատաւորաց, Բարսղի մեկնութեան վեցօրէից, Քրոնիկոնին Եւսեբեայ, Կանոնաց յանուն Ս. Սահակայ ի կանոնագիրս, և այլ մնացորդաց՝ ինչ որ կը գտնուին ուրեք ուրեք, ինչպէս ի Հարանց վարս և այլուր։ Այս ոճով է որ Հայերէնն իբրև մատենագրական լեզու կը մերձենայ և կը հաւասարի իսկ հին յոյն և լատին և արդի եւրոպական լեզուաց։ Զերկրորդ ոճն, մեղմ, հանդարտ և քաղցր՝ կու տան մեզ Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան, Եւագր Պոնտացի, որ դեռ ի լոյս ընծայուած չէ, առաջին ժԳ. ճառք մեկնութեան Ոսկեբերանի ի Յովհաննէս. վերջինս այս կը մերձենայ բազում ուրեք առատութեամբն չորրորդ ոճոյ։ Երրորդ ոճոյ, որ մեղմութեամբն և քաղցրութեամբ կը մերձենայ երկրորդին՝ օրինակ են թարգմանութիւնք գործոց ասորի

Հարց, Եփրեմի և Զգօն անուանեալ գրոց, որ կ'ընծայէ Յակոբայ Մծբնացւոյն, թարգմանութիւն Եւսեբեայ Եկեղեցական պատմութեան։ Այս ոճ, նշանաւոր հանդերձ պարզութեամբն և քաղցրութեամբ՝ ունի առանձինն ինչ, որ թերևս արդիւնք է դաշնակաւոր խեցբեկ կարգին *սիրիաք* կոչուած քրիստոնէական ասորերէնին։ Չորրորդ ոճն, զոր յիրաւի է կոչել պերճ, արևելեան տաճկական, թէպէտ անչափ յորդութեամբն և անկանոն դարձուածներուն համար օտար արդի ճաշակի, սակայն հոյակապ և սքանչելի, և իբրև գանձարան իմն անսպառ նիւթոյ հայերէնին՝ կը մատուցանէ մեզ նպաստ մեծ յուսումն հայ լեզուին։ Այս ոճոյ օրինակ են Ագաթանգեղոս, Կորիւն, Բուզանդ և մեծ մասն անկանոն գրոց հին Կտակարանին, ինչպէս Յուդթայ, Իմաստութեան և երից Մակաբայեցւոց։

Հարազատ հայերէնի հոյակապ մնացորդաց մէջ, որ գործ են համակ առաջնոյ կիսոյ Ե. դարուն՝ բարձր ի գլուխ կը պարծի մատեան սքանչելւոյն Եզնկայ։ Լեզուն Եզնկայ, որ զհանգամանս առաջին և երկրորդ ոճոյ միանգամայն ունի՝ կ'ընծայեցուանէ հայ լեզուին տիպը կատարեալ՝ քան զոր չենք կրնար մտածել հայ լեզուն իւր բոլոր լրութեամբն առնլով։ Այս նիւթոյ վրայ արժան կը համարինք հոս բերել զյառաջաբան «Քաղուածոյք ի թարգմանութեանց նախնեաց» անուն մատենկան, որ Վիեննայի Մխիթարեանց մամլէն ի լոյս ընծայուած է։—«Առանց իրիք երկմտութեան է, թէ փառն հայերէն լեզուի ամենայն գեղեցկութեան, յստակութեան և մեծութեան աղբիւր են մատեանք առաջին կիսոյ հինգերորդ դարուն կամ բուն ոսկեղէն դարուն մերոյ։ Սակայն և այնր ևս ծաղկեալ ժամանակի մատեանք, թէպէտ հաւասարք գեղեցկութեամբ, պատուով և ճոխութեամբ (հեղինակութեամբ, իշխանութեամբ)՝ սակայն այլ և այլ իմն նկարագիրս յինքեանս երևեցուցանեն, զորս ի դէպ է ի չորս իմն դասս ատէն ամփոփել ըստ իւրաքանչիւր սեպհական բանից կամ ոճոյ։ Առաջին դաս (որպէս Եզնիկ, Ս. Սահակ ի Կանոնագիրս, Ոսկեբ. մեկն. Մատթէի, Թղթոց Պաւղոսի, Եսայեայ, Ծննդոց, Եւսեբեայ Քրոնիկոն, Սեբերիանոս, Կիւրղի Աղեքս. մեկնութիւն Ծննդոց, Դատաւորաց, Թուղթք Պաւղոսի ի ս. Գիրս և այլք։ —Մեծ մասն ս. Գրոց, որպէս հինգ գիրք Մովսէսի, Թագաւորութիւնք, Մարգարէութիւնք, Աւետարանք՝ ի սմին կարգէ են, միայն առաւել պարզութեան կերպարանս ունին, իսկ մնացեալքն, որպէս Եսթեր, Յուդիթ, Մակաբայեցիք, Թուղթք Պետրոսի՝ մասամբ իւիք յերկրորդ և ի չորրորդ դաս անդր հային) է ընդհանրականագոյն իմն քան զամենայն և գիպող ոճ ի հայերէն մատենագրութեան բուն ու-

կի դարու՝ վասն կանոնաւորն ընթացից, վասն ճիշդ բանից, ռամ և ազգի ազգի ասացուածոցն և անուանց, վասն պարզն զարդուց և զօրեղ դարձուածոց, որովք է պատեհ ի զօրաւոր ճարտարխօսութիւն, ի գեղեցիկ պատմագրութիւն, ի լուսաւոր փիլիսոփայութիւն և ամենայն իսկ ճշդագոյն մտածութիւն։ Այլ ամին հակառակ՝ այլ ևս երեքին դասք ոճոյ 'բուն ոսկի դարուն, թէպէտև ամենայն ուրեք և ամենայն մասամբք հանգիտապատիւք են առաջնումն այնմիկ՝ սակայն աստիճանաւ իմն հեռանան տակաւ ի հանգամանաց անտի, որովք առաջին այն ոճն յարմարագոյն ի մատենագրութիւն է, և դիւրաւ թեքի և խոնարհի յամենայն։ Այսպէս մի դաս (որպէս Ագաթանգեղոս, Բուզանդ, Կորիւն) յերեցունց տասի իբրև դիւանական իմն կամ արքունական բարձրագոչ հրամանաց բարբառ հնչեցուցանէ, և միւս ևս դաս (որպէս Ս. Եփրեմայ մեկնութիւնք, Եւսեբայ Կեսարացւոյ Եկեղեցական պատմութիւն) բանաստեղծական իմն լեզուաւ բարբառի, ամենևին հատեալ ի զարդ և ի ծաղիկս. իսկ չորրորդն (որպէս Կոչումն ընծայութեան Կիւրղի Երուսաղեմ., Ոսկ. Մեկն. Յովհաննու յառաջին 13 ճառսն, Եւագր Պոնտացի) մեղմ, հանդարտ և խաղցրախօս և կանոնաւոր քան զերկու առաջինսն, սակայն և ոչ իբրև զառաջինն զայն դաս, յոր Եզնիկն և մեծ մասն մատենագրաց ժամանակին մատենագրեցին։

**26.** Գանք այժմ մնացորդաց երկրորդ կիսուն Ե. դարուն։ Մեր լեզուն ունի գրուածներ, որ կ'ընծայուին Ե. դարուն երկրորդ կիսուն մէջ կամ անմիջապէս զկնի թարգմանչաց ապրող ոմանց, որպիսի են Խորենացին, Եղիշէ, Փարպեցին, Մամբրէ և Դաւիթ Անյաղթ, Գիւտ և Մանդակունին, որոց անձին, ժամանակին և գրոց վրայ որ նոցա կ'ընծայուին՝ չունինք միևնոյն ստուգութիւնը, ինչպէս պիտի տեսնենք՝ խօսելով զնոցանէ մի առ մի։ Գիրք մը չըկրնար ընդունուիլ իբրև ստուգիւ հարազատ՝ եթէ չունի ժամանակակից կամ գէթ իբր ժամանակակից վկայութիւն. ի պակասել այս վկայութեան՝ մատեանը գոնէ չպարտի ունենալ լեզուի կամ ոճոյ անհամաձայնութիւն ժամանակին հետ՝ որում կ'ընծայուի։ Այսպէս Եզնկայ գիրքը կ'ընդունինք իբրև հարազատ գործ նորա, նախ՝ վասն զի հեղինակը կը յիշուի իբրև աշակերտ թարգմանչաց իւրմէ ժամանակակցէն Կորենէ, նաև Փարպեցւոյն պատմութենէն, որ է ստուգիւ նոյն դարուն գործ. իսկ լեզուն Եզնկայ ունի թարգմանչաց ժամանակին կատարեալ նկարագիրը։ Նոյն բան է Կորեան համար, որ կը յիշուի իբրև աշակերտ թարգմանչաց, նաև իբրև մատենագիր վարուց Մեսրոպայ՝ ի Փարպեցւոյն որ է գրեթէ ժամանակակից. յայսր ամենայնի վերայ լեզուն ևս ունի ճիշդ ժամանակին

նկարագիրը։ Բայց այսպէս չէ Խորենացւոյն, Եղիշէի, Փարպեցւոյն, Գիւտայ, Մանդակունւոյն, Մամբրէի և Դաւթի Անյաղթի համար, որ կ՚ընծայուին մեզ իբրև անձինք երկրորդ կիսոյ Ե. դարուն, և որոց իւրաքանչիւրին կը տրուին այլևայլ մատենագրութիւնք։ Գիւտայ և Մանդակունւոյն համար ունինք վկայութիւն՝ թէ ապրեցան Ե. դարուն երկրորդ կիսուն մէջ, նախ՝ վասն զի կը գտնենք զնոսա 475—487 ի շարի անուանց կաթողիկոսաց, որ է վաւերական յիշատակարան. երկրորդ՝ կը յիշուին իբրև նոյնպիսիք ի պատմութեան Փարպեցւոյն։ Բայց գործք որ կ՚ընծայուին նոցա՝ ո՛չ յիշուած են ժամանակակից աղբերէ, և ոչ ներքին հանգամանք այն գործոց կու տան մեզ ստոյգ վկայութիւն՝ թէ այն գործք են նոցա հարազատ մատենագրութիւն։ Գիւտայ ընծայուած նամակն, որով որպէս թէ Գիւտ կը խնդրէ Դաւթէ Անյաղթէ հաչակաւոր Բարձրացուցէքը՝ է գործ իմաստակի, անհեդեդ և անպիտան ոճով, և ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ անմիտ խաղ նմանաձայն բառերու.—«Բացայայտել բաց բարեարարապէս բարուց». «Խնդրելի խուզողացս խօսել խորհրդով ի խաչն». «փրկելոցս փրկաւէտ փայտին փառաց փեսայի». «պաշտելի և պատուելի, պանծալի ըստ Պաւղոսի պարծել ի պատուական պսակն Ցիսուսի», և ստորագրութիւնը—«Գիւտ գագաշեալ և գերեզման ի դարշապարս»։ Իսկ Մանդակունւոյն ընծայեալ ճառք, թէպէտ չէ ստուգիւ յայտ, թէ են նորա մտաց ծնունդ, քանզի ընտիրքն այն ճառերէն ունին յոյն և ասորի հարց ոճը՝ ըստ լեզուին գոնէ, թէև ոչ հաւասար լեզուին թարգմանութեանց Ոսկեբերանի և Կիւրղի՝ են, բայց ի սակաւուց՝ ոչ շատ օտար հինգերորդ դարու ճաշակէն, ուստի և կարեն լինել նորին իսկ Մանդակունւոյ, ժամանակակցի, թերևս և գործակցի թարգմանչաց։ Սա ևս չէ անհաւանական, թէ մեծ մասն ճառից որ հասած են մեզ յանուն Մանդակունւոյն՝ կրած են ոգէտներէ աղաւաղութիւն, առանց որոյ անտարակոյս աւելի վստահութեամբ պիտի ընդունէինք զՄանդակունին աշակերտակից թարգմանչաց, և զգործս ընծայեալս նմա՝ արդարև արժանի նմա։ Բան մը սակայն կը պղտորէ զմեզ. ճառը զոր կը գտնենք ի վախճանի Պատմութեան Փարպեցւոյն, իբրև խօսուած ի Մանդակունւոյն՝ ոչ լեզուաւ և ոչ այլովք հանգամանօք է արժանի գործ աշակերտի թարգմանչաց։

Խորենացւոյն, Եղիշէի և Փարպեցւոյն թէ անձին և թէ գործոց համար որ նոցա կ՚ընծայուին՝ չունինք ամենևին ժամանակակից վկայութիւն. ինչ որ գիտենք զնոցանէ՝ է յետին, ԺԱ, ԺԲ, ԺԳ. դարուց հեղինակներէ, որպիսի են Ասողիկ, Սամուէլ, Կիրակոս, Շնորհալին, Ցայսմաւուրք, որոց վկայութիւնք չունի, ըստ սկզբան ա-

առողջ քննադատութեան, ճշմարիտ պատմական վկայութեան բնու-
թիւն։ Արդարև Փարպեցին ի թղթին կը յիշէ Մովսէս ումն Փիլիսո-
փոս, զոր կը դնէ յանիրաւի հալածեալ ազգէն, մինչև հանել զոս-
կերս նորա գերեզմանէն և ընկենուլ ի գետ.—«Երանելի փիլիսո-
փոսն Մովսէս, որ արդարև մինչդեռ էր ի մարմնի, ցանկ երկնային
զօրացն էր քաղաքակից, ո՞չ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի աքեղեանդ
Հայոց հալածական արարին։ Ո՞չ զլուսաւորիչն և զոգիտահալած
զգրեանն նորա առ անգիտութեան փալթաղիկէս կոչէին, և այլ
քազում ինչ իրօք թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ
զխաբէական զեպիսկոպոսութիւնս (՞) նման դեղոց մահու արբու-
ցեալ սրբոյն՝ հեղձուցին։ Որոյ ի ժամ վախճանին զինչպիսի՜ ահաւոր
նզովս գրով ի վերայ գլխաւորաց քահանայութեանդ ասացեալ է՝
ձեզէն իսկ գիտէք տեղեկացեալք։… Զոսկերսն ի գերեզմանէն հա-
նել տային և ի գետ արկանել»։ Սակայն չէ հաւանական կարծել,
թէ այս Մովսէս, փիլիսոփոս ըստ Փարպեցւոյն՝ էր Հայոց Պատ-
մութեան կարծեցեալ հեղինակն, որ կոչուած է Մովսէս Խորենացի
քերթողահայր։ Մեր մեծագոյն, թերևս և հնագոյն վկայութիւնն
յիշեալ երեք մատենագրաց անձին համար՝ նոցա գրոց ճակատն է—
«Մովսիսի Խորենացւոյ պատմութիւն Հայոց». «Եղիշէի վարդապետի
վասն Վարդանայ և Հայոց պատերազմին». «Ղազարայ Փարպեցւոյ
պատմութիւն Հայոց», վկայութիւն՝ որ չունի ինքնին կատարեալ
ապացուցի զօրութիւն, քանզի այն խորագիրք կամ ճակատք կարեն
ի յետոյ ևս լինել։ Թողլով այս անձանց առանձին պարագաներն,
ջբբև յետին հակասական աղբիւրներէ, զորօրինակ թէ Մովսէս էր
քեռորդի Մեսրոպայ, եղբայր Մամբրէի, կամ ատենադպիր Սահա-
կայ. Եղիշէ էր քարտուղար մեծին Վարդանայ, ապա եպիսկոպոս
Ամատունեաց, ապա խոտաճարակ մերթ ի լերինս Մոկաց, մերթ ի
Ռշտունիս՝—արժան կը համարինք միայն յիշել, թէ այս երեք
պատմութիւնք կը համարուին գրուած ի խնդրոյ—առաջինն՝ Սա-
հակայ ասպետի Բագրատունւոյ, երկրորդն՝ Դաւթի ուրումն երիցու
Մամիկոնենի, երրորդն՝ Վահանայ մարզպանի։ Մեր արդի պատմա-
կան տեղեկութիւնք այս երեք մատենագրաց անձին վրայ չեն տար
մեզ քան զայս աւելի լոյս. ուստի կը մնայ մեզ դարձունել զհայեց-
ուած մեր ներքին հանգամանաց այն գործերուն որ նոցա կ՚ըն-
ծայուին։ Սկսինք ի Խորենացւոյն։

**27.** Նայելով ժամանակին յորում կը դադրի պատմութիւն
Խորենացւոյն, այն է մահն Սահակայ և Մեսրոպայ (440, 441), և
վկայութեան նորա, թէ ի գրելն զպատմութիւն իւր էր ծերացեալ՝
հարկ է դնել զնա հասակակից Սահակայ և Մեսրոպայ, ուստի և

ժամանակակից վերջին քսան կամ երեսուն ամաց Դ. դարուն. ամէն Հակառակ, ըստ ժամանակին Սահակայ Բագրատունւոյ († 481), որոյ Հրամանաւ կ'ըսուի թէ գրեց՝ Հարկ է դնել զնա ապրած մինչև ի վերջ կոյս Ե. դարուն, և յայնժամ կ'ելլէ սա դժուարութիւնը, թէ ընդէր ոչ ինքն կը յիշէ Վարդանանց պատերազմը, և ոչ Փարպեցին զնա։

Այս և ուրիշ պատճառներ կու տան իրաւամբ կասկածել, թէ Խորենացւոյ անուամբ Հռչակեալ Պատմութիւնն յետոյ է քան զԵ. դար, և գործ ճարտար խաբեբայի ուրումն, որ սակայն կը մատնէ զինքն պատմական անտեղութիւններով, ցուցնելով մեզ աննշան, թերևս և պիտակ աղբիւրներ, որպիսի են Մարիբաս, Ողիւպ, Բարդածան, Խոռոհբուտ և սոցին նմանք։ Մեր դատաստանն զԽորենացւոյն սաս և այլուր այնչափ աւելի զարմանալի պիտի թուի շատերուն՝ որչափ մեծ Համարումն վայելած է այս անունն իբրև նշանաւոր ոք թող ուրիշ մասին՝ մանաւանդ իբրև Հայր մեր Հնագոյն պատմութեան։ Արդարև Խորենացւոյն Պատմութիւնն է որ կը կարծուի տալ մեզ Հայ ազգին ծագումը՝ ցուցնելով մեզ զՀայկ, Նահապետ ազգին՝ իբրև մին Նոյայ որդւոյն Յաբեթի սերունդէն և աշտարակաշինութեան Հսկաներէն յետ կործանման աշտարակին և ցրուելոյ գլխաւորաց այն շինութեան։ Այսու տուած կը Համարուի մեզ Խորենացին նաև Հայ լեզուին ծագումն՝ իբրև միոյ մայր լեզուներէն, որ այն առթիւ եղան լեզուաց խառնակութենէն։

Թողլով աշտարակաշինութեան և լեզուաց խառնակութեան աւանդութիւններն, որ Հաւատալեաց կարգէն են և լուրջ գրուածներու մէջ Հազիւ և պայմանաւ միայն կրնան մտնել՝ Հայ լեզուն կրնայ իւր կազմութեան տարրներէն միոյ և փոքրագոյն մասին Համար գէթ Համարուիլ մայր, կամ լաւ ևս ասել՝ անյիշատակ Հին. իսկ մնացեալ և մեծագոյն մասն լեզուին է արդիւնք արուեստի կամ ճարտարութեան. Թողլով ասեմք լեզուին կէտը՝ Հայկ և Հայ անուանց Համար Համառօտիւ և Հարևանցի միայն ըսենք, թէ Հայկ իբրև անձն և Նահապետ ազգին իբրև սակայն չկրնար ընդունուիլ անաչառ դատողութենէ։ Հայկ անունն ի Խորենացւոյն առնուած՝ պատմական մտօք չկրնար առնուիլ։ Արդարև զանունս զայս յառաջ քան զԽորենացին Թարգմանիչք մեր կը յիշեն ի Թարգմանութեան Գրոյն երկիցս։ Սակայն յայտնի է, թէ Հայկ է անմակն աստեղագիտութեան Այուգն, որ տրուած է Կասիոպէ անուն Համաստեղութեան, զոր Թարգմանիչք մեր կը շփոթեն թերևս սխալմամբ Օրիոն Համաստեղութեան Հետ, և չկայ և ոչ դոյզն

հաւանականութիւն հաւատալոյ, թէ Սահակայ Հայկն է նոյն ընդ Հայկայ Խորենեան Պատմութեան։

Իսկ զծագումն Հայ անուան, որ արդարև ի վաղուց կը թուի տրուած ազգին, բայց ոչ յառաջ քան զանունն Արարատ, և ազգէն միայն (քանզի օտարներու անծանօթ է Հայ անունն իբրև համանուն Արմէն անուան)՝ չենք կրնար նոյնչափ ստուգիւ ցուցնել։ Միայն ստոյգ է թէ Հայ անունն չէ այնչափ հին որչափ Արմէնն։ Արարատ և Արմէն անուններէն, որովք ծանօթ են ազգ և երկիր մեր օտարաց, առաջինն, հնագոյն՝ յիշուած է յեբրայական աւանդութեան, երկրորդն՝ Պարսից (Դարեհի) ժամանակէն, ուստի և ճանչցուած ի Յունաց։ Միայն եթէ ներելի է յայսմ ևս հաւանական թելադրութիւն մը ընել՝ Հայ անունն է սեմական լեզուին հայ—կենդանի բառն, զոր ազգը տուած է ինքեան նմանութեամբ իւր գրացի ցեղին զէնդ անուան, որ կը նշանակէ նոյնպէս կենդանի։ Մեր մեկնութիւնն Հայկ անուան առ այժմ ստուգագոյն կը թուի մեզ՝ քան զմեկնութիւնն զոր տուինք Հայ անուան։

Գալով Խորենացւոյն հայերէնին՝ կ'ըսենք թէ թէպէտ Խորենացին չեղեալ Ե. դարու հայերէնէն, կ'ստեղծէ նոր իմն հայերէն, որով կը հորդէ ճանապարհ մեր դպրութեան միջին դարուն՝ գեր ի վերոյ է սակայն (բաց ի մասանց ինչ) քան զազնուագոյն գրիչս յետ թարգմանչաց, զԵղիշէ և զՓարպեցին, մին՝ բաւական յստակութեամբն հանդերձ՝ հեռևակ, և միւսն՝ հանդերձ ընտանեկան լեզուի զուարթութեամբ՝ սակաւ մի գռեհիկ։ Խորենացւոյն լեզուն, իւր բոլոր անհարթութիւններովն հանդերձ, մանաւանդ անխտրութեամբն և մթութեամբ՝ ունի տակաւին բազում ուրեք բարձրութիւն իմն և ազնուութիւն, մինչև ինքնին բաւական էր երևեցունել զհայերէնն ի կարգի ազնուագոյն լեզուաց՝ եթէ չգոյր ևս նախորդ դպրութիւն մի քան զնորայն ազնուագոյն։ Խորենացւով ստեղծուած դպրութեան խտիրն իւր նախորդներէն յայսմ է, որ չունի այն «առանց որոյ ոչն», sine qua non, որ կը յարդարէ լեզուն լինել օրինակ անստգիւտ, արդի բառով դասական մատենագրութեան։

Հոս երկու դժուարութիւն կ'ելլէ մեր առջև Խորենացւոյն Պատմութեան վրայ։ Առաջինն է լռութիւն Փարպեցւոյն։ Փարպեցին, որ գրեթէ ամէն կանխագոյն գրուած պատմութիւն—Ագաթանգեղոս, Բուզանդ, Կորիւն—յանուանէ կը յիշէ, զիւր դատաստան ևս յաւելլով իւրաքանչիւրին վրայ՝ զԽորենացւով կ'անցնի լռութեամբ, թէպէտ Փարպեցին պարտէր լինել ծանօթ այն գործին, եթէ էր այն արդարև գրուած ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, գործակցին Վահանայ, բարեկամին և պաշտպանի Փարպեցւոյն։ Կայ

նաև ուրիշ կէտ արժանի դիտողութեան։ Փարպեցին ունի հատուածներ, որ գրեթէ բառ առ բառ կան առ Խորենացւոյն։ Եթէ գնենք թէ Փարպեցին քաղած է այն հատուածները ի Խորենացւոյն՝ կը հետևի թէ գիտէր նա զԽորենացին. ընդէր ուրեմն կ՚անցնի լռութեամբ։

Նորայր Բուզանդացի եղաւ Փարպեցւոյն այս զարմանալի լռութիւնն առաջին անգամ հրապարակաւ յիշող, որ և կը համարի լուծել հատուածներուն նոյնութեան պատճառն ըսելով, թէ Փարպեցին կ՚առնու զնոսա ոչ այն մատենէն որ հասած է առ մեզ յանուն Խորենացւոյն, այլ ուրիշ հասարակաց աղբերէ. որմէ առած է նաև այն մատեանն (Խորենացին)։ Բայց այսու չվերնար դժուարութիւնն. քանզի խնդիրը բուն Փարպեցւոյն լռութեան վրայ է, ո՛չ թէ հատուածներուն աղբեր։ Հատուածներուն համար կրնար ըսուիլ նաև, թէ հեղինակ նոցա է ինքն Փարպեցին (թէպէտ այս ևս ճշմարիտ չէ), և ի նմանէ առնուած և մուծուած են նոքա ի Խորենացին, մանաւանդ եթէ դնենք, ինչպէս հարկ է դնել ըստ մեզ՝ թէ Խորենացւոյն Պատմութիւնն է յետին գործ և խառն, այսինքն ոչ միօրինակ ըստ լեզուին։ Այս յայտնի է մանաւանդ առ Սահակ ուղղեալ նամակէն, որոյ թէ՛ ոճը և թէ բառերն կը ցուցնեն, թէ յետնոյ ուրուք յաւելուած է այն թուղթը. զնոյն իմա և Գ. դպրութեան ԿԲ. գլխոյն համար։ Զիարդ և իցէ՝ հատուածներուն խնդրոյն լուծումը չքառնար բուն դժուարութիւնը, որ է լռութիւն Փարպեցւոյն։ Ուստի կ՚ըսենք դարձեալ. Փարպեցին ինչպէս կրնար զանց առնել յիշել այնպիսի գործ մի՝ զոր չէր մարթ նմա չգիտել։ Ապա բանաւոր կը թուի դնել, թէ Մովսիսի Խորենացւոյ անուամբ Հայոց պատմութիւն անծանօթ էր Փարպեցւոյն։

Երկրորդ դժուարութիւնն այն է, թէ Խորենացին գրեց իւր պատմութիւնն ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ, որ էր մարզպան առ Վահանաւ և զօրապետ քաջ ի պատերազմունս նորա, որ և մեռաւ ի կռուի իբր 482-ին։ Արդ կ՚ըսենք, թէ Խորենացին չէր կրնար գրել իւր Պատմութիւնն ի խնդրոյ այս Սահակայ, ապա թէ ոչ՝ հարկ է դնել, թէ կամ Խորենացին ապրեցաւ յետոյ քան զպատերազմն Վարդանանց—և յայնժամ պիտի հարցուի, թէ ընդէ՛ր չյիշեր զպատերազմն Վարդանանց և այլ սմին նման կարևոր անցեր— և կամ թէ Սահակ Բագրատունի, խնդրելու համար ի Խորենացւոյն Հայոց պատմութիւն մը՝ պարտէր լինել գոնէ 20 կամ 25-ամեայ ի մահուան մեծին Սահակայ (440), իբր գոնէ 5 ամօք յառաջ քան զհաւանական մահ Խորենացւոյն ըստ իւր Պատմութեան։ Եւ արդարև Սահակ ի խնդրելն ի Խորենացւոյն գրել զայն պատմութիւն՝

ըստ բանից Նորին Խորենացւոյն էր մանուկ, այսինքն պատանի խակ.—«Զի՞նչ քեզ կարօտութիւն առասպելք սուտք, կամ զի՞նչ պէտք անմիտ և անհանճար բանից յարմարանք (Պարսից)։... Այլ տացուք զայսոսիկ մանկականի քոյոց տիոց և անհասութեան խակութեանդ լեալ տարփանք. վասնորոյ եղիցի և աստանօր լնուլ մեզ զփափաք կամաց քոց» (Խոր. Ցղգս. Բիւրասպի Աժդահ.)։ Եւ յայնժամ հարկ է դնել զՍահակ Բագրատունի (այս Սահակ Բագրատունի մարզպան՝ այլ է ի Սահակայ Բագրատունւոյ այսպետէ, սպարապետէն Խոսրովու վերջնոյ—Խոր. Գ. ԽԱ, ԽԳ, ԽԴ—ԽԶ, ԾԱ.) ի մահուան իւրում (482), աւելի քան 64-ամեայ. դժուարին ի հաւատալ, թէ 65 կամ 67-ամեայ ծերունի մը այնպիսի քաջութեամբ կը կռուէր Վահանայ պատերազմներուն մէջ, մանաւանդ այն դարուն պատերազմներուն, որ գօտեմարտութիւն էին մանաւանդ քան ճակատ։ Բայց թողունք այս կէտը. եթէ Սահակ Բագրատունի մարզպան խնդրեց ի Խորենացւոյն գրել պատմութիւն Հայոց 440-ին և կամ ամօք ինչ յառաջ կամ յետոյ՝ կը յիշէին անտարակոյս այն պամութիւնը հեղինակք որ գրեցին այն դարուն, ինչպէս ըսինք՝ Փարպեցի, Նաև Կորիւն, որ շատ անգամ առիթ ունենալով յիշել զԽորենացին՝ երբեք չէ յիշեր։

Ըսինք թէ բանաւոր է դնել, թէ Մովսիսի Խորենացւոյ անուամբ պատմութիւն անծանօթ էր Փարպեցւոյն. ըստ մեզ աւելի բանաւոր է, թէ բնաւ եղած չէ այնպիսի մատեան ի հինգերորդ դարու։ Ոչ միայն Մովսիսի Խորենացւոյ անուամբ պատմութիւն, այլև ոչ Մովսէս Խորենացի անուն ոք կայ յիշուած ի Ե. դարու, բայց միայն այն Պատմութեան Ա. դպրութեան առաջին գլխոյն խորագրին մէջ—«Մովսիսի Խորենացւոյ յաղագս մերոյս յիսկզբանն յայսմ բանիցս Սահակայ Բագրատունւոյ խնդրալ». բայց այս յիշատակութիւն ես չկրնար համարուիլ իբրև ժամանակակից վկայութիւն յայլմէ, թէ կար Մովսէս Խորենացի ոմն ի Ե. դարու, հեղինակ այն Պատմութեան, և թէ Սահակ Բագրատունի ստուգիւ խնդրած է զայն ի նմանէ։ Մենք եթէ ոչ բոլորովին ճշմարիտ՝ գէթ մեծապէս հաւանական կը համարինք մօտերս հռչակուած կարծիքը, թէ Խորենացին, ո՛ ոք և է՝ չէ մատենագիր Ե. դարու, այլ Է-ին։ (Խորենացւոյն անձին վրայ ես մեր տարակոյսն արդէն յայտնեցինք)։

Բաց Հայոց Պատմութենէ, զոր, առ ի չգոյէ զօրաւորագոյն վկայութեան, ի հաւատս գործին տիտղոսին կամ ճակատուն ընդունեցանք իբրև մատենագրութիւն Մովսէս Խորենացի անուն նշանաւոր ուրումն՝ կ'ընծայուին նոյն Մովսիսի ուրիշ մատենագրութիւններ. Թուղթ մի առ Սահակ ոմն Արծրունի հանդերձ պատմու-

թեամբ պատկերի Կուսին ի Հոգեաց վանս, Պատմութիւն Հռիփսիմեանց, ձառք երկու, մին՝ ի Հռիփսիմեանս, և միւսն՝ Ցաղագս Վարդավառի, Գիրք Պիտոյից և Աշխարհացոյց։ Մենք այս գործերուն և ոչ մին կրնանք ընծայել Խորենացւոյն։ Եթէ Խորենացւով պարտինք իմանալ Պատմութեան հեղինակը՝ այս պատմութիւնն այնպէս կը տարբերի լեզուաւ և ոճով միւսներէն, որ եթէ մին ի նոցանէ է Խորենացւոյն իբրև հեղինակի այն Պատմութեան՝ միւսները չեն նորա։ Դարձեալ՝ այն գործերէն ոմանք մանաւանդ են անվայել Խորենացւոյն։ Պատկերին պատմութիւնը, որ գովութեամբ կը յիշատակուի յոմանց՝ է գործ անհեդեդ, որ նախատինս մանաւանդ քան պատիւ կը բերէ հեղինակին, թէպէտ ունեցած է զարմացողներ արդի բանասէրներէն իսկ։

Հայկական հնախօսութեան գիտութեամբ պատկառելին Ինճիճեան, որոյ մեծամեծ գործերն յայտնի են Հայաստանի աշխարհագրութեան վրայ, ի Ստորագրութեան հին Հայաստանեայց բերելով ընդարձակ յօդուած մի ի թղթոյն առ Սահակ Արծրունի. ուր յիշուած են տեղիք ինչ երկրին Անձևացեաց՝ կը յաւելու. «Ընդարձակ գրեցաք զբանս Խորենացւոյն որ ոչ սակաւ տեղեկութիւն տայ զդրէց երկրին Անձևացեաց» (Ինճ. Ստոր. հին Հյստ. 198, 199)։ Արդարև ի գրուածէն, որոյ տիտղոսն է «Թուղթ Սահակայ Արծրունեաց իշխանի առ երանելի վարդապետն Մովսէս Խորենացի», հանդերձ պատասխանւով այս վերջնոյն՝ կ'առնուի ինչ ինչ տեղեկութիւն զդրէց երկրին Անձևացեաց, սակայն գրուածն չունի այն պատմական կարևորութիւնն, զոր կը թուի տալ նմա Ինճիճեան և այլք ըստ նմանէ ի միաբանակցաց նորա։ Որպէս զի տեսնուի, թէ ինչ պատմական յարգ կրնայ ընծայուիլ այն առասպելական պատմութեան, որ ինչպէս ըսինք նախատինք է մանաւանդ քան պատիւ հեղինակին՝ բերենք ընդարձակ հատուած մի, և յաւելունք ինչ որ կրնայ համարուիլ ի նմա հաւանականապէս պատմական։ Նպատակ թղթոյն կը թուի թէ էր ցուցնել զերկիրն Անձևացեաց իբրև տապարէզ առաքելութեան Բարթողիմէոսի, բայց հեղինակն ի հեռուստ կ'առնու զիւր նիւթ, այն է ի փոխմանէ Կուսին և ուրիշ պարագաներէ որ նորա կենաց կը վերաբերին։ Հեղինակ թղթոյն, յետ պատմելոյ բազում և այլանդակ սքանչելիս կատարեալ ի շնորհս Կուսին—զօրօրինակ, թէ Հրեայք կամեցան անգամ մի այրել զտունն Մարիամու, բայց հուրն փոխանակ այրելոյ զտունն, այրեց Հրեաներէն եօթն այր, յորոց միջի էին Կայիափա և Աննա քահանայապետք, և թէ ուրիշ անգամ ի յարձակել Հրէից ամբոխն մեծաւ ի վերայ Մարեմայ և Յովհաննու առ եզերբ Յորդանանու՝ հրեշտակ

Աստուծոյ դրաւ զՄարիամ և զՅովհաննէս յայնկոյս գետոյն, և Հրեաներէն քսան հոգի կորոյս ի Յորդանան, և դարձեալ թէ Համբարձման օրը դիմելով բազմութիւն Հրէից քարերով Ձիթենեաց լեռը քարկոծել զՄարիամ՝ քարկոծեցին յինքեանց յիսուն մարդ,—յետ պատմելոյ, ասեմք, զայս այլանդակ սքանչելիս՝ կը յաւելու թէ Յովհաննէս աւետարանիչ իմանալով զմօտալուտ փոխումն Կուսին յաշխարհէս՝ կիւպարիս (նոճի) փայտի վրայ յորմէ շինուած էր Խաչափայտն՝ նկարեց զպատկեր Կուսին, և աղաչեց զնա՝ շնորհել այն պատկերին զօրութիւն բժշկելոյ զբորոտս։ Պատկերը կ'ստանայ սքանչելագործ զօրութիւն։ Կոյսը կը ննջէ, և ի տանել առաքելոց զմարմին նորա ի գերեզման՝ կը կատարուին դարձեալ սքանչելիք.—Սոփոնիա անուն հրէի մը բազուկն, ի կամել նորա արգելուլ դագաղը, զատուելով յարմկանէ՝ կը կախուի դագաղէն, և սքանչելեօք կը միանայ դարձեալ ընդ մարմնոյն. անթիւ մարդիկ ի Հրէից և ի հեթանոսաց կը դառնան, և բազում բորոտք և այլ ախտաժէտք կը բժշկուին։ Որովհետև Բարթողիմէոս առաքեալ գտնուած չէր ընդ այլ առաքեալս ի փոխման Կուսին՝ միւս առաքեալք ի մխիթարութիւն նորա կու տան նմա զայն պատկեր, զոր առնլով Բարթողիմէոս կու գայ ի Հայս, քանզի լսած էր, թէ Թադէոս առաքեալ սպանուած էր ի Սանատրկոյ, և անտի կ'երթայ նախ յերկիրն Պարսից մինչև ի մայրաքաղաք նոցա Խորասան, ուր բռնելով զպատկերն ընդդէմ արեգական՝ կը խաւարեցունէ զճառագայթս նորա վեց ժամ, յամօթ և ի յանդիմանութիւն մոգուց արևապաշտից։ Բայց կը հաւատան և կը մկրտուին ութք միայն ի մոգուց, զորս առեալ Բարթողիմէոս կու գայ միւսանգամ ի Հայս, յերկիրն Անձևացեաց, կը հալածէ զդևս այն երկրին Դարբնաց քար կոչուած տեղէն, ինչպէս նաև Կանգուառ և Ագռաւուց քար կոչուած բերդերէն, կը կործանէ զպատկերն Անահտայ, կը հալածէ աստուածուհւոյն պաշտօնեաներն, որ կախարդական դեղեր կը շինէին և կը բաժնէին. ի պատիւ Կուսին կը շինէ եկեղեցի ուր կը դնէ պատկերը, կը շինէ նաև հիւղեր ի բնակութիւն կուսանաց սպասաւորաց եկեղեցւոյն, կոչելով զտեղին Հոգեաց վանս, և զեկեղեցին՝ Սուրբ Աստուածածին։ Սուրբն Գրիգոր, կը յաւելու պատմիչը, յետ իբր երեքհարիւր ամաց, գալով անդր յայցելութիւն պատկերի Կուսին՝ նորոգեց զեկեղեցին և վանքը։ Ահա բուն բանք թղթոյն.—

«Սուրբ Կոյսն բազում չարչարանս կրեաց և վտանգս ի Կայիափայ, և հալածանս ի Հրէից։ Զի ոչ տային նմա գնալ ի գերեզմանն կալ յաղօթս, կամ ի Գեթսեմանի յայտնապէս, կամ յայլ տեղիս տնօրինականս Փրկչին, բայց միայն գաղտնի։ Հալածեալ զեղբայր Տեառն

զՅակոբ՝ երթեալ հարին հուր տանն յորում կայր սրբուհին. և շրջապատեալ հուրն զՀրեայսն՝ կիզեաց արս եօթն և զԿայիափա և զԱննա և զՂևի քահանայապետս, ոչինչ վնասեալ տանն։ Եւ յաւուր մկրտութեան Տեառն խաժամուժ ամբոխ Հրէից գնացին ի Յորդանան ըմբռնել զՏիրամայրն և զՅովհաննէս. իսկ հրեշտակ Աստուծոյ եդ զնոսա յայնկոյս գետոյն, և ի կամել անցանել Հրէիցն՝ արս քսան ի նոցանէ կորոյս Յորդանան։ Եւ յաւուր Համբարձման Տեառն ի լեառն Ձիթենեաց յախուռն քարամբք հասեալ Հրեայքն ի վերայ սրբուհւոյն՝ սատակեցին յինքեանց արս յիսուն քարավէժս։

«Իբրև հրաւիրեցաւ սրբուհին ի փոխումն առ որդին իւր՝ աւետարանիչն Յովհաննէս ի կիւպրիս փայտէ յորմէ էր կենսաբեր Խաչն՝ կերպաձևեաց զպատկեր Տիրամօրն։ Ի ժողովել աշակերտացն ի յղարկել զԱստուածամայրն իւրեանց՝... Յովհաննէս ընդ այլ առաքեալսն աղաչէր զտիրամայրն՝ դնել զփայտեղէն անօթն ի վերայ աստուածատիպ երեսաց իւրոց, օրհնել զնա և խնդրել ի Տեառնէ... բառնալ նովաւ զբորոտութիւն, զի ախտ բորոտութեան մեծապէս ցասմամբ եռայր յերկրի, յԵրուսաղէմ առաւել ևս։.. Յայնժամ առեալ ամենօրհնեալ սրբուհւոյն զպատկերն նկարեալ ի ձեռս իւր, և տարածեալ զաստուածընկալ ձեռս իւր յերկինս՝ ասէ. Տէր Աստուած ամենակալ,.. խնդրեմ ի քէն, բարձ զախտ բորոտութեան ի մարդկանէ ի ձեռն այսր նկարեալ փայտեղէն պատկերիս, զզօրութիւն Երրորդութեանդ տպաւորելով ի նմա ի ձեռն իմոյ աղաչանացս։ Եւ ասացեալ առաքելոցն զամէնն՝ նոյնժամայն կամար լուսեղէն եկաց ի վերայ սրբուհւոյն, և լոյս ամպեղէն խաչանման կաթեաց ի սուրբ պատկերն։ Եւ առեալ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի զպատկերն ի ձեռաց սրբուհւոյն՝ երկրպագեցին ամենեքեան։ Իսկ յորժամ աւանդեաց զհոգին իւր անարատ Կոյսն ի ձեռս Տեառն՝ ամբոխ Հրէից յուզէր, և հասեալ ի վերայ առաքելոցն՝ կամէին յափշտակել զմարմին Կուսին, և հարան ամենեքեան կուրութեամբ։ Իսկ այր ոմն անուն Սոփոնիա բուռն եհար զմահճացն, և մնացին ձեռն Սոփոնեայ կախեալ յարմկացն։ Լայր և աղաչէր այրն, եղուկ զինքն կոչելով մինչև ի գերեզմանն։ Ասէ Պետրոս. Ով մոլորեալ Հրեայք, մինչև ցե՞րբ կայք մոլորեալ և յամառեալ. զի՞արդ ոչ զղջանայք յանզեղջ սիրտս ձեր, այլ կայք յետս հեստեալք որպէս հայրն ձեր սատանայ։ Եւ լալիւն մեծ էր Հրէիցն։ Ասէ Պաւղոս. Դարձարուք առ Տէր և խոստովանեցէք Աստուածածին զսուրբ Կոյսն, և գթասցի ի ձեզ։ Աղաղակեաց ամբոխն և ասեն. խոստովանիմք զՔրիստոս որդի Աստուծոյ Հօր, որ էառ մարմին անճա-

ռապէս ի Կուսէն։ Եւ առեալ Պետրոսի զձեռանէ Սոփոնեայ՝ եբեր մերձեցոյց ի հաստուածս ձեռացն, և միացեալ յարեցան իբրև զառաջինն։ Եւ լուսաւորեցան խաւարեալքն և մկրտեցան Հրեայք և հեթանոսք յոյժ յոյժ բազում. և բորոտք որ էին ի քաղաքին՝ գային առ առաքեալսն և օծանէին իւղով, և տեառնագրէին սուրբ պատկերաւն, և առժամայն բժշկէին յախտիցն, մինչ զի համբաւն ընդ ամենայն Հրէաստան ընթանայր։

«Բարթողիմէոս առաքեալ, մի յերկոտասանիցն, ոչ գոյր ընդ նոսա, զի ընդ Թովմայի ի Հնդիկս էր երթեալ։ Եւ եկեալ նա յետոյ առ առաքեալսն՝ բռնադբօսեաց զնոսա ցուցանել նմա զգանձն աստուածային, զմարմին ամենօրհնեալ Կուսին։ Եւ յօժարեալ նոցա լնուլ զփափաք տենչանաց եղբօրն իւրեանց՝ բացին զսուրբ գերեզմանն, և գտին ունայն յաստուածակիր մարմնոյն։ Ապա յոյժ սգացեալ Բարթողիմէոս... տրտմէր առաւել քան զառաւել։ Զայն տեսեալ երանելի առաքեալքն և մխիթարել զիւրեանց եղբայրն կամեցեալ՝ ետուն նմա զպատկեր տիրամօրն որ էր ի փայտն նկարեալ։ Զոր առեալ Բարթողիմէոսի՝ մեծաւ փութով եկ ի Հայս հրամանաւ Ս. Հոգւոյն, զի զԹադէոս առաքեալ սպանեալ էր Սանատրուկ արքայ յԱրտազ գաւառի։ Իսկ նա եկեալ Հայս՝ գնաց յերկիրն մոգուց և Պարսից. և հասեալ ի քաղաք Թագաւորութեան նոցա, որոյ այժմ Խորասան ասի բարբառովն իւրեանց, և արար ընդ մէջ կրակարանին սիւն լուսոյ հրեղէն, և կալեալ զսուրբ պատկերն ընդդէմ արեգական՝ արգել զճառագայթս նորա և խաւարեցոյց զվեց ժամ, և ոչ հաւատացին՝ բայց միայն ութ ի մոգուցն յայնցանէ, որք երկրպագեցին Փրկչին, և եկեալ մկրտեցան յառաքելոյն։ Զորս հանեալ ի միջոյ ամբարշտացն, և բերեալ ի Հայս, և եկեալ յաշխարհն Անձաւացեաց ի Համբաւ քարի միոջ, քանզի դեւք բազումք բնակեալ էին անդ և պատրէին զմարդիկ տեղւոյն, տուեալ յայնմ տեղւոջէ դեղս կախարդականս ի կատարել զպղծութիւն ախտից, կռանոձայնս դարբնաց ահաւոր հրաշիւք արհաւիրս գործէին. յորս մարդիկ աշխարհին սովորեալք՝ անդ առ քրային դեգերէին, առեալ ի չաստուածոցն ծրարս թարախածորս ի պատիր ախտիցն, որպէս գծրարսն Կիպրիանոսի առ ի պատիր Յուստինեայ կուսին, և անուանէին զանուն տեղւոյն այնորիկ Դարբնաց քար։ Հասեալ սուրբ առաքեալն Աստուծոյ անդ՝ հալածեաց զդարբինսն զգո●ծօնեայս չարին, և զկուռսն փշրեաց որ յանուն Անահտայ էր։ Յոր ժողովեալ բազմութիւն դիւացն ի վերայ լերինն բարձու ի հիւսիսոյ կողմանէ, քարաձիգս առնելով անթիւ բազմութեամբ յոյժ ձայնս ճիչս և գոչիւն սաստիկ արձակէին։ Իսկ սուրբ առաքեալն տեառնագրեաց խաչ մի փոքրիկ, և կանգնեաց ի վերայ

քարի լերինն, և անդէն դեւքն չիք լինէին»։ Հոս կը յաւելու Հեղինակն իբրև նոր տեղեկութիւն. «Զոր յետոյ սուրբ Հայրապետն Գրիգորիոս զխաչն առաքելական ընդ իւր շրջեցուցանէր մինչև ի թողուլ նորա զաշխարհս։ Իսկ յետ ժամանակի եդաւ ի վերայ գերեզմանին Տրդատայ արքային Հայոց»։ Ապա կը տանի յառաջ իւր պատմութիւնը. «Եւ է տեղին այն, յորում դեւքն էին՝ լեռնամէջ վիմաց, ի վերայ գետոյն մեծի որ կոչի Տիգրիս, հուպ ի բերդն ամուր որ կոչի Կանգուառ, և միւսոյն՝ Ագուաւաց քար, ուստի ջուրք բազումք հոսեն ի լերանց ամրոցին ըստ գարնանային մասանցն, գան անցանեն ընդ հիմունս տաճարի Տիրուհւոյն և խառնեալ օժանդակեն զգետն մեծ Տիգրիս։ Անդ հիմնարկեալ սուրբ առաքեալն ըզհիմն տաճարի սրբուհւոյն իւրովք իսկ ձեռօքն, շինեաց եկեղեցի փոքրագոյն, և անուանեաց զնա Սուրբ Աստուածածին, և եդ ի նմա զպատկեր Տիրուհւոյն, և տայ զնա Սուրբ կանանց... շինէ խրճիթս վանիցն, և տեսուչս հրամայէ լինել հաւատացելոցն, և քահանայ կացուցանէ անդ յիւրոց աշակերտացն, անուանէ զտեղին Հոգեաց վանս յանուն Տիրամօրն և սուրբ Կուսին»։ Դարձեալ կը յաւելու իբրև պատմական տեղեկութիւն. «Զոր եկեալ յետոյ սրբոյն Գրիգորի վանս հաստատեաց զտեղին, շինեալ եկեղեցիս, բայց զտաճար սրբուհւոյն ոչ քակեաց, զի ձեռագործ առաքելական էր»։

Այս առասպելական գրուած, առհասարակ ծանօթ իբրև թուղթ Խորենացւոյ առ Սահակ Արծրունի՝ է գործ անվաւեր, ոչ հին քան զԺ. դար, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Թէ ով էր այս Սահակ Արծրունի՝ չէ յայտ, նա հաւանական է մանաւանդ, թէ է պիտակ անուն, քանզի Սահակ անուամբ իշխան Արծրունի չկայ յիշուած ի Ե. դարու ոչ առ Խորենացւոյն և ոչ առ Եղիշէի և Փարպեցւոյն։ Կայ Սահակ Արծրունի վկայեալ (մարտիրոսացեալ), ըստ աւանդութեան, հանդերձ եղբարբ իւրով Համազասպաւ, զորս կը տօնէ Հայաստանեայց եկեղեցին, որպէս և հօրեղբայր սոցա միւս եւս Սահակ Արծրունի, անկեալ ի պատերազմի ուրեք ընդդէմ Հագարացւոց. բայց սոքա իբր երեքհարիւր ամօք յետոյ են քան զկարծեցեալ ժամանակ Խորենացւոյն։ Զիարդ և իցէ՝ անծանօթ ոմն Սահակ Արծրունի, որպէս թէ կարդալով Խորենացւոյն պատմութիւնը, զոր կ'անուանէ «Գիրք Բագրատունեաց» ըստ օրինակի համանուան իւրոյ Սահակայ Բագրատունւոյ կը գրէ առ Խորենացին թուղթ, ուր յետ կոչելոյ զնա «Հրեշտակ և ոսկեաւոր մեծութեանցն Քրիստոսի, յերկրի երկնայինդ ցուցեալ այր երկնակենցաղ, լուսաւորիչ խաւարելոց» ա. հ., գալով բուն խնդրոյն, որ էր պատմութիւն պատկերի իբր Կուսին ի Հոգեաց վանս յերկրին Անձևացեաց՝ ասէ. «Կամիմք

ուսանել ի քէն զսքանչելագործութիւն պատկերին որ յանուն Տի-
րամօրն կայ ի Հոգեաց վանս, եթէ ուստի կամ յումմէ բերեալ յայն
տեղի, զի բազում ինչ այլք այլապէս պատմեն իբրս ոչ նման մի-
մեանց, և ոչ հաւատացաք ումեք զստոյգն գիտել։ Այլ իմ ընկա-
լեալ ի ձեռաց սուրբ մատանցդ գիր՝ առաւել յուսով ընկալայց քան
զգիրս Բագրատունեաց ի ձեռս իմ»։

Այս թղթոյն որպէս թէ պատասխանն է թուղթն կոչեցեալ
առ Սահակ Արծրունի, ուր հեղինակն յետ խօսելոյ զշինութենէ
Բեթղեհեմի և զազգահամարէն Մատթէի և Ղուկասու—խնդիրք
զորոց չասէ ինչ անուանեալ թուղթն Սահակայ—կ'սկսի զպատմու-
թիւն պատկերի Տիրամօրն և շինութեան Հոգեաց վանուց հանդերձ
մանր մասամբք, ինչպէս արդէն տեսանք։ Թուղթն այն, կարծե-
ցեալ պատասխանի Խորենացւոյն՝ կ'սկսի այսպէս. «Զյորդութիւն ա-
ռատութեան աստուածային Հոգւոյն շնորհաց որ ի վերայ քո ան-
դուլ մտացդ... յառաջ քան զտեսութիւն ի ձեռն համբաւոյ լուեալ
իմ՝ զխոհականութիւն մեծի հզօրիդ ծանեայ, և այժմ ի ձեռն ար-
ժանափայլ խնդրոյս, յառաջ քան զնկարագիր պատկերիդ և զտիպ
մարմնոյդ, տեսեալ ի վրէժխնդրութիւն հոգւոյդ՝ գիտացի որ ի վե-
րին շնորհացն է այս։ Վասնորոյ ինքն բանն Աստուած ի ստեղ-
ծանելն զմարդն բանիւ զարդարեաց։... Վասնորոյ զբանին վառ և
բորբոք պահելով զկայծակն՝ անմահանամ։... Ցայսցանէ գիտացի
լեալ զքեզ, մեծ իշխանդ Վասպուրականի, որ թէպէտև ի նախա-
րարս ես թուեալ, սակայն ի տանէ թագաւորազուն, և ազգաւ ես
քաջ և նախնական, և արդասաւոր սերունդ և զարմ, ոչ բանիւ
միայն ուռճացեալ, այլ և ի գործ պատերազմաց ընդ առաջինսն
թուեալ։.. Այլ զխնդիր աստուածասէր իշխանիդ որ վասն պատուա-
կան պատկերի Տիրամօրն, անմահ քոյին ազգի թողում յիշատակ»։
Շատ տարբեր չէ յայսմանէ թուղթ Խորենացւոյն առ Սահակ Բագ-
րատունի.—«Զանսպառ խաղացմունս աստուածայնոցն ի քեզ շնոր-
հացն, և զանդուլ Հոգւոյն ի վերայ քո իմացուածոցդ շարժմունս
ծանեայ ի ձեռն գեղեցիկ խնդրոյս, յառաջ քան զմարմնոյդ զհո-
գւոյդ ընկալեալ զծանօթութիւն։... Զի եթէ վասն բանին մեք, որ-
պէս ասի, պատկեր Աստուծոյ, և դարձեալ՝ առաքինութիւն բանա-
կանին է խոհականութիւն, և քո յայսոսիկ անհատ ցանկութիւն՝
ապա ուրեմն գեղեցիկ մտածութեամբ զխոհականութեանդ քո վառ
և բորբոք պահելով զկայծակն՝ զարդարես զբանն։... Ցաղագս որոյ
հեշտաբար ընկալեալ զքո խնդիրդ՝ աշխատասիրեցայց ածել ի կա-
տարումն, անմահ ի յիշատակ թողուլ քեզ և որ զկնի քոյինքն են
գալոց ազգք։ Զի և ազգի ես նախնականի, և քաջ և արդասաւոր,

*ոչ միայն ի բանս և ի պիտանաւոր խոհականութիւնս, այլ և ի մեծամեծ և ի բազում գործս արժանափառս»։*

*Որպէս զի յայտնի ևս տեսնուի նմանութիւնն՝ հոս գլխաւոր մասերն համեմատելով դնենք։*

### ԹՈՒՂԹ ԱՌ ՍԱՀԱԿ ԲԱԳՐԱ-ՏՈՒՆԻ

*Զանսպառ խաղացմունս աստուածայնոցն ի քեզ շնորհացն, և զանդուլ Հոգւոյն ի վերայ քո իմացուածոցդ շարժմունս ծանեայ ի ձեռն գեղեցիկ խնդրոյս։*

*Ցառաջ քան զմարմնոյդ՝ զհոգւոյդ ընկալեալ զծանօթութիւն։*

*Զի եթէ վասն բանին մեք... պատկեր Աստուծոյ... ապա ուրեմն գեղեցիկ մտածութեամբ զխոհականութեանդ քո վառ և բորբոք պահելովզկ այծակն՝ զարդարես զբանն։...*

*Հեշտաբար ընկալեալ գքո խընդիրդ՝ աշխատասիրեցայց ածել ի կատարումն, անմահ ի յիշատակ թողուլ զայս քեզ և որ զկնի քոյինքն են գալոց ազգք։...*

*Ազգի ևս նախնականի, և քաջ և արգասաւոր, ոչ միայն ի բանս, այլև ի մեծամեծ և ի բազում գործս արժանափառս։*

### ԹՈՒՂԹ ԱՌ ՍԱՀԱԿ ԱՐԾՐՈՒ-ՆԻ

*Զյորդութիւն առատութեան աստուածային Հոգւոյն շնորհաց որ ի վերայ քո անդուլ մտացդ՝ ծանեայ ի ձեռն արժանափայլ խնդրոյս։*

*Ցառաջ քան զնկարագիր պատկերիդ և զտիպ մարմնոյդ՝ տեսեալ ի վրէժխնդրութիւն հոգւոյդ։*

*Վասնորոյ և ինքն բանն Աստուած ի ստեղծանելն զմարդն բանիւ զարդարեաց։ Վասնորոյ զբանին վառ և բորբոք պահելով զկայծակն՝ անմահանիամ։*

*Այլ զխնդիր աստուածասէր իշխանիդ որ վասն պատուական պատկերի Տիրամօրն. անմահ քոյին ազգի թողում յիշատակ։*

*Ազգաւ ևս քաջ և նախնիական, և արգասաւոր սերունդ և զարմ, ոչ բանիւ միայն ուռճացեալ, այլ և ի գործ պատերազմի։*

*Նմանութիւնս այս եղած է թերևս գլխաւորապէս առիթ ընծայելու Խորենացւոյ՝ զթուղթն առ Սահակ Արծրունի։ Բայց թո՛ղ զի անվայել էր հարուստ մտաց Խորենացւոյն գրել երկու թուղթ առ երկու իշխանս, զերկոսին ևս ոչ իմաստիւ միայն, այլև բանիւք գրեթէ նոյն, թող ասեմք զայս՝ նմանութիւնն է ինքնին պիտակ, ստորին և անյաջող, օտար ի մուլթ, բայց կիրթ հելլենաբանութենէ թղթոյն առ Սահակ Բագրատունի, յետին դարու ճաշակաւ, որոյ ապացոյց են անճահ բանք, որպիսի են «յորդութիւն առատութեան», որ է աւելաբանութիւն, «արժանափայլ», նմանութիւն «արժանափառ» ածականի Խորենացւոյն, բայց խորթ և ան-*

յարմար գոլականին—որժանափայլ ՝խնդիր. Նոյնպէս ՝անյարմար է մնաց ածականն «անդուլ», որ առ Խորենացւոյն է վերադիր շարժման. Նոյնպիսի է «վրէժխնդրութիւն» Հոգւոյ, իբր եռանդն կամ նախանձաւորութիւն, և ի վեր քան զամենայն՝ ռամկական շաղկապն որ—ստորին դարուց նշանակ։ Բայց քան զլեզուն աւելի յայտնի ապացոյց կու տայ Թուղթն՝ թէ է գործ հարիւրաւոր ամօք յետոյ քան զԽորենացին։ Հեղինակն յետ կոչելոյ զԱրծրունիս «ազգաւ քաջ և նախնական, և արգասաւոր սերունդ»՝ կը յարէ. «Որպէս երկուց մարդոց լինելութեամբ երկիրս հաստատեցաւ՝ այսպէս ի ձեռն երկուց տանցդ, Արծրունեաց և Բագրատունեաց, այս (Հայոց) աշխարհիս սերունդք բնակեն։ Եւ որպէս երկու աչք զբոլոր մարմինն զարդարեն՝ այսպէս երկու կողմանքդ, արևելից և հիւսիսոյ, լուսաւորին. և որպէս երկու ձեռք միացեալ ի գործ պիտոյանան՝ այսպէս և երկիրս Հայոց ի ձէնջ գոյանայ։ Եւ որպէս ի վերայ երկուց ոտից բոլոր մարմինն հաստատի՝ այսպէս և ի ձեռն երկուց տանց (Բագրատունեաց և Արծրունեաց) ամենայն ազգք Հայոց հնազանդ լինելով ի մի մարդ կատարեալ ի Քրիստոս լինին։ Եւ դուք երկոքին ցեղք ընդ միմեանս միացեալ անշարժ կայք»։ Եւ իսկոյն կը յաւելու. «Քեզ ասեմ, իշխանդ Արծրունեաց. եցոյց ինձ Տէր, զի յորդւոց քոց երեք եղբարք վասն Քրիստոսի ի մահ մատնեալք՝ երկուքն արեամբ վկայք լինին Քրիստոսի, և մինն վրիպեալ ի նոցանէ և ոչ յայսմ վայելէ։ Վասն նոցա Աստուած զԹագն Թագաւորին Սենեքերիմայ յորդիս քո դարձուցեալ յերկարաձգէ յերկրի»։ Հեղինակն մոռանալով, թէ Թուղթն է առ Սահակ Արծրունի, և ոչ առ Սահակ Բագրատունի՝ յանկարծ կը դարձունէ իւր կարծեցեալ մարգարէութիւնն առ Բագրատունին ասելով. «Եւ Բագրատունւոյդ ասեմ. յիշէ Տէր զբանն իւր, եթէ Թագաւորք ի քէն ելցեն, և թագաւորէք ի Դուին»։ Ոմանք յայտնի մարգարէութիւն կը տեսնեն յայսմ։ Արդարև, ըստ աւանդութեան, որ կը թուի լինել ստոյգ՝ երեք իշխանազուն եղբարք Արծրունիք, Սահակ, Համազասպ և Մերուժան, ստիպուելով յուրացութիւն հագարացի ոստիկանէն (786)՝ առաջին երկուքն նահատակեցան, իսկ երրորդն, Մերուժան, ուրացաւ, այլ յետոյ սպանաւ ի Դաւթէ ումեմնէ Մամիկոնենէ։ Բայց առողջ քննադատութիւնն զայս կարծեցեալ մարգարէութիւն, ինչպէս նաև զառաւելութիւնն զոր կու տայ Թուղթըն երկուց ցեղից, Բագրատունեաց և Արծրունեաց, իբրև երկուց տիրող իշխանութեանց՝ ապացոյց միայն կրնայ համարել, թէ հեղինակ Թղթոյն չէ ոչ յառաջ և ոչ յետոյ քան զԺ. դար, այսինքն այնպիսի ժամանակ, մինչդեռ կանգուն էր Թագաւորութիւնն Ար-

ծրունեաց (908—1021)։ Զայս կը ցուցնէ աներն. «Աստուած զթագնթագաւորին Սենեքերիմայ յորդիս քո դարձուցեալ՝ յերկարաձգէ յերկրի»։ Անուն ասորեստանցի թագաւորին կրնայ տալ կարծել, թէ հեղինակ թղթոյն էր առ Սենեքերիմաւ Արծրունեաւ (1003—1021)։

Գալով թղթոյն այն մասին, որ կը թուի լինել իբր պատմական՝ ասեմք. Ո՛րչափ հակառակ է առողջ քննադատութեան ընդունել, թէ բաղուկ մի հրաշիւք զատուելով յարմկանէ՝ դարձեալ միացաւ հրաշիւք, կամ թէ մարդ բանելով պատկեր ընդդէմ արեգական՝ կարաց վեց ժամ արգելուլ արեգական լոյսը, կամ թէ դուրսէն տան մը կրակ տուողներն այրեցան, և տունը մնաց անկէզ. որչափ հակառակ է, ասեմք, այս ամենայն առողջ մտաց՝ նոյնչափ հակառակ է ընդունել, թէ Յովհաննէս աւետարանիչ էր քաջ պատկերահան, նկարեց զպատկեր Կուսին ի փայտի և ստիպեց զԿոյսն տալ հրաշագործ զօրութիւն այն պատկերին. թէ Կոյսը զիջաւ աղաչանաց նորա. թէ առաքեալք երկիր պագին այն պատկերին, յորոյ վերայ իջած էր լոյս յերկնից. թէ Բարթողիմէոս առաքեալ կը շրջեցունէր այն պատկերն ընդ իւր, շինեց եկեղեցի ի պատիւ պատկերին, հաստատեց վանս, կարգեց կուսանս ի սպասաւորութիւն եկեղեցւոյն, նաև եպիսկոպոս և քահանայս ի հովուել զհաւատացեալս, այլովքն հանդերձ, գործք՝ որ հակառակ են ոգւոյ քրիստոնէութեան և առաքելական պաշտաման, մանաւանդ առաքելոց դարուն, որչափ գիտենք ի պատմութենէ նախնի քրիստոնէութեան (Յովհ. Դ. 24, Գործ. Զ. 3, 4)։ Վանականութիւնը չէ հին քան զԴ. դար, իսկ պատկերներու յարգ և պաշտօն՝ ևս աւելի նոր։ Գաղտնիք թղթոյն առ Սահակ Արծրունի, որչափ կը տեսնուի՝ սա է. Բարեպաշտ խաբէութիւնն, որ սովորական էր հին եկեղեցական մատենագրութեան՝ կը թելադրէ անանուն ումեմն գրել Ժ. դարուն, թերևս վկայաբանութենէ (վէպ) ուստեք կամ ասորական առասպելէ առնլով՝ զպատմութիւն պատկերին Հոգեաց վանուց։ Հեղինակն, որպէս զի յարգի երևցունէ գործը՝ կարևոր կը համարի հրատարակել զայն յանուն հին և համբաւաւոր հեղինակի ուրուք. և ո՞վ կար այնպէս երևելի յազգին հնութեամբ և համբաւով, ոչ միայն իբրև մատենագիր, այլև իբրև պատմաբան—ըստ աւանդութեան ասեմք—ինչպէս Խորենացին. ուստի գործը կը հրատարակուի յանուն Խորենացւոյն. և որպէս զի վերնայ ամէն կասկած խաբէութեան՝ գործը կը ցուցուի գրուած ճիշդ այն պարագաներու ազդեցութեամբ՝ որովք ասի գրուած բուն Պատմութիւն Խորենացւոյն։ Աստ ևս, որպէս անդ՝ անուն իշխանին որ կը խնդրէըզպատմութիւն պատկերին ի Խորենացւոյն՝ է Սահակ. սա ևս, իբրև

զառաջին Սահակն՝ անձամբ անծանօթ է Խորենացւոյն. առ սա և, որպէս առ առաջինն՝ կը գրուի թուղթ գրեթէ միևնոյն իմաստիւ և բառերով. պարագաներ՝ որ կը յաւելուն մանաւանդ քան կը բառնան կասկածը։ Բայց զիարդ և իցէ՝ թուղթն առ Սահակ Արծրունի, իւր բոլոր առասպելներով և անվաւերութեան յայտնի նշաններով՝ կ'ընդունուի ազգէն իբրև գործ Խորենացւոյն, և որ զարմանալին է՝ իբրև այնպիսի կ'ընդունուի նաև «Հայկական հնախօսութեան գիտութեամբ պատկառելի» գլուխներէ, որպիսի էին Չամչեան և Ինճիճեան։

Թէ ի լերինս Անձևացեաց, ի Դարբնաց քար կամ Դարբնաքար կոչեցեալ տեղւոջ կար մեհեան կամ կուռք Անահտայ, զոր որպէս թէ կործանեց Բարթողիմէոս, և թէ պաշտօնեայք չաստուծոյն կուտային կախարդական ծրարներ կամ դեղեր ի ժամանակս հեթանոսութեան՝ չէ անհաւանական։ Սակայն չէր մարթ հեղինակի թըղթոյն, եղեալ ևս թէ էր Խորենացին, գիտել զայս։ Իսկ թէ ի կործանել Բարթողիմէոսի զմեհեանն, դևք կ'արձակէին քարեր, հանելով ճիչ և գոչիւն սաստիկ, ա. հ.՝ է նմանութիւն Ագաթանգեղոսի, ուր յաճախ կը պատմուին, ի կործանել Գրիգորի զմեհեանս կռոց՝ դիւաց երևել կերպակերպ նմանութեամբք, դնել մարտ պէսպէս զինուք ըստ օրինակի հեծեալ և հետևակ զօրաց, նետս և քարինս տեղալ ի վերայ մարդկան, և ի վախճանի անհետանալ ճչիւք և աղաղակօք (Ագաթ. ԾԸ, ԾԹ, ԾԺԵ)։

Չէք սակայն տարակոյս, թէ Դարբնաց քարն, ինչպէս նաև Կանգուառ և Ագռաւուց քար, էին տեղիք ի լերինս Անձևացեաց, վերջին երկուքն՝ իբրև բերդք, իսկ առաջինն՝ իբրև վէմ մեծ, հաւանականապէս նման սալի դարբնաց, յորմէ առած էր թերևս անունը. սակայն չէ ամենևին բանաւոր ընդունել, թէ կռանահարութեան ձայներէ, որ կը լսուէին անդ ի խաբէութենէ դիւաց՝ կոչուած էր այնպէս. բայց եթէ հարկ է ասել՝ թէ—եթէ արդարև կը լսուէին այնպիսի ձայնք—տեղին էր բերան հին ինչ հրաբխոյ, զոր տգիտութիւնն և սնապաշտութիւն կ'ընծայէին դիւական ինչ զօրութեան, համարելով զտեղին, ծուխէն և ձայներէն որ կը լսուէին ի ներքուստ ի խորոց անտի՝ իբրև դարբնոց դիւաց, և այս պատճառաւ կոչուած էր Դարբնաց քար։ Սակայն այն զոր ասացաք յառաջագոյն՝ կը թուի հաւանականագոյն ըստ մեզ։

Ինչ որ ըսինք զպատմութենէ պատկերին՝ զնոյն պարտ է ասել Հռիփսիմեանց պատմութեան համար, որ է նոյնպէս առասպելական և գործ տգէտ խաբեբայի։ Թէպէտ ամէն ողջամիտ ընթերցող կարդալով առաջին էջը միայն, կը տեսնէ գործին բնութիւնը՝

գնենք նախ համառօտութիւնը մեր արդի լեզուաւ, ապա բնագիրը քաղելով։ Ըստ բանից հեղինակին՝ որպէս թէ Դաւիթ ումն (որ հասարակաց անուն է պիտակ անձանց) գրած էր Հռիփսիմեանց պատմութիւնն առանձին մատենիւ Եկղեսիաստէս անուն, զոր որպէս թէ չկրնալով թարգմանել հայ հեղինակն, կամ անուանեալ Խորենացին, ծերութեան և հիւանդութեանն աղագաւ՝ համառօտիւ միայն առաւ՝ ինչ որ Ագաթանգեղոս թողած էր։ Ըստ պատմութեան այս Դաւթի՝ Հռիփսիմէ էր Օգոստոս կայսեր ցեղէն, ինչպէս նաև Գայիանէ սնուցիչ նորա, որ էր մայր վանաց յանուն սրբոյն Պօղոսի ի Հռոմ, և նուիրած էր զՀռիփսիմէ կուսան չքնաղագեղ՝ Աստուածածնին, կախելով զպարանոցէն նորա խաչափայտէն մաս մը, որ թաթաւեալ էր արեամբն Քրիստոսի, և զոր Յակոբոս առաքեալ եղբայր Տեառն կտրած հանած էր Խաչէն ըստ խնդրոյ Պատրոնիկեայ տիկնոջ։ Երբ կայսերական տունէն կը խորհէին առնուլ զՀռիփսիմէ ի տիկնութիւն վասն սքանչելի դեղոյն, Գայիանէ իմանալով զայս Հոգւով սրբով՝ կը փախցունէ զկոյսն յԱղեքսանդրիա, անտի կ'երթայ յԵրուսաղէմ յերկրպագութիւն Ս. տեղերուն, նախ այրին ուր ծնաւ Քրիստոս, ապա ի գերեզման Աստուածածնին ի Գեթսեմանի, և կը մնայ հոն ամիս մի, մինչև կ'առնու հրաման ի տեսլեան՝ երթալ ի Հայս յերկիրն Արարատայ, ի բաժին սրբոյն Թադէոսի։ Մարիամ կը հրամայէ նոցա առնուլ ի միասին փայտեղէն պատկերը, որ փոխման օրը դրուած էր նորա երեսաց վրայ։ (Պարագայ մը՝ որ կը ցուցնէ, թէ պատկերամարտից դարէն ետքը գըրուած է պատմութիւնը)։ Անտի (Երուսաղեմէ) կու գան յԵդեսիա երկրպագել փրկչական պատկերին։ Ոմանք յընկերաց նոցա կը մնան յԵդեսիա ի մեծ եկեղեցւոջն Աբգարու, հիմնեալ ի Թադէոսէ. այլք կու գան ի Դարանաղիս և կը բնակին Սեպուհ լերան Մանեայ այրք կոչուած տեղը։ Էին աւելի քան եօթանասուն որ ելան ի Հռոմէ (այսինքն բանակ մի կանանց). այլք մնալով ի Հռոմ՝ կատարեցան հրամանաւ Դիոկղետիանոսի։ Դարանաղեաց գաւառէն ելլելով՝ Հռիփսիմեանք կու գան բազմութեամբք քահանայից ի Բզնունիս, կը բնակին ի քաղաքին Խլաթ, ապա կ'երթան ի Մոկս ի տեղի մի կոչեցեալ Ս. Խաչ։ Հոն կը թողու Գայիանէ խաչը Կճաւ կոչուած տեղ մի, ուր յետոյ սուրբն Գրիգոր հաստատեց վանս։ Անտի երթալով գաղտ Բերկրի անուանեալ գաւառ մի, ուր կը տիրէր աչացաւ՝ հալածեցին ախտը, բղխեցուցին երկու աղբիւր, կարմիր և սպիտակ ջրով, որ մինչև ցարդ, ասէ, կ'օգնէ աչացաւի։ Այն լերան վրայ կը պատմեն, ասէ, Ասորիք, թէ հանգեաւ տապանն։ Սղոցաձուկն մի պատահելով կեցուց հոն տապանը, և տեղին կոչուած է Թմնիս,

որ կը նշանակէ Ուլթ Յոգիք, որ էր թիւ եղելոց ի պատանին։ Հոն սուրբքն շինեցին խրճիթներ, ապա երթալով բնակեցան ի Տմորիս, ծառաւէտ ընկուզուտ տեղեր։ Անտի եկան ի բուն Հայս, ի խորշ մի Մշկունեաց լերին, ուր կային մշկապորտ այծեմունք, և բորոտներ՝ զորս բժշկեցին քահանայք, ուր և բղխեցաւ աղբիւր հրաշիւք. և ծերագոյնք ի կուսանաց մնացին հոն մինչև ի վախճան իւրեանց։ Անտի գնացին լեռը Բժունեաց, ուր մնացին ոմանք, կոչելով զտեղին Ս. Տիկին։ Ապա եկան Ագռաւաքար կոչուած տեղ մի, ուր գտան հաւատացեալներ և պատկեր մի Տիրամօրն։ Անտի գացին Պաղատոյ անուն լերան գլուխը, ուր էր տուն Արամազդայ և Աստղկան. անտի ուրիշ լեռ մի, անուանեալ Տուն կրակի։ Հոն որջացեալ էին երկու վիշապք, որոց կը զոհէին բնակիչքն աղջկունս և պատանիս։ Դևք կը գործէին հոն ահագին թնդումներ և կայթումներ, և խոռոչներու մէջ կային անհնարին թունաւոր օձեր և կարիճներ։ Հոն հասնելով կուսանք՝ հալածեցին դևերը, որ վայ վայ կարդալով փախան, իսկ օձք քարացեալ մնացին մինչև ցայսօր, ասէ մեծանուն պատմիչն։ Դևք փախան յերկիրն Մարաց, իսկ պատկերք կռոց փշրեցան զօրութեամբ Խաչին, մինչև հաւատալ բոլոր բնակչաց։ Անտի երթալով դէպ ի հիւսիս՝ եկան Կորիթ կոչուած գիւղ մի, փշրեցին զկուռս, սատակեցին թունաւոր օձեր նշանաւ Խաչին, դիւաց աղբիւրը ցամաքեցուցին, ուր յետոյ Ս. Գրիգոր շինեց երկու եկեղեցի, և կանգնելով սեղան՝ թողուց հոն զիւր գօտին և զգաւազան։ Ապա գալով ի Տոսբ՝ հանդէպ Վան քաղաքին շինեցին խրճիթ, և հոն պահելով Խաչը՝ ապաւինեցան ի Վարագայ, քանզի լսեցին թէ ի խնդիր էին բռնել զնոսա։ Այն տեղն է Ուրբաթայրք, որ այսպէս կոչուած է՝ վասն զի երկու քահանայք, որ էին Հռիփսիմեանց հետ, ուրբաթէ ուրբաթ մատուցանելով պատարագ՝ «բաշխէին արժանաւորապէս սուրբ կանանցն զմարմին և զարիւն Տեառն»։ Մեր սքանչելի պատմիչն ինչպէս կը տեսնուի, իւր առասպելաց շղթայն հիւսելու այլ ևս անկարող՝ իւր արքայազուն կուսանաց մնացեալ պատմութեան համար կը ղրկէ զընթերցողն առ Ագաթանգեղոս.—«Վասն կատարման և չարչարանաց և նահատակութեան երանելեացն յԱյրարատեան գաւառ ի Վաղարշապատ քաղաքի՝ ուսցիս յԱգաթանգեղեայ պատմութեանցն»։ Ահա և բնագիրն, զոր ինչպէս ըսինք՝ կը դնենք քաղելով.—

«Յաղագս զանազան տեղեաց և գնացից և վարուց սրբոց Հռիփսիմեանց ի բազմաց մատենագրաց Յունաց արարեալ քննութիւն, և իմացեալ որ (ինչ) հեռի էր ի ստութենէ և լի ճշմարտութեամբ՝ կարգեցի քեզ (ի) գրոցն որ կոչի Դաւթի Հռոմայեցւոյ, գիրս եկեղե-

սիաստէս, զոր կամեցեալ իմ թարգմանել՝ և ոչ ժամանեցի. մնայ այլում տեղւոյ և իմաստնոյ։ Զի ես մանկանացու գոլով, ծեր և հիւանդոտ,... սակաւ մի երկրորդեցի ի նոյն գրոց, յորմէ քաջ քարտուղարն թողեալ (էր) Ագաթանգեղոս։... Եւ արդ ի նոյն գիրս (Դաւթի) պատմի, ի թագաւորական տոհմէ գոլով սրբոյն՝ Աւգոստոս կայսեր՝ լինի և Գայիանէ ի նոյն ցեղէ, առաքինի և զարմանալի հօր և մօր դուստր։... Արքն որպէս թէ առաքեալք, լաւութեան նախանձ ունէին, և կանայքն զգաստանալին, նախանձ ունելով Աստուածածնին։... Յայսցանէ գոլով և ծնողքն սրբոյն Հռիփսիմեայ, սան յաւազանէն լեալ սրբոյն Գայիանեայ, որ էր մայր կուսից վանականաց ի Հռովմ ի վանս սրբոյ առաքելոյն Պաւղոսի... ուր և այլք յետ նորա աշակերտեցան, լինելով անձինս երեք հարիւր, պահելով զհրամանս առաքելոյն։ Եւ այսմ տեղւոյ տեսուչ գոլով Գայիանեայ՝ սնուցանէ առ ինքեան զՀռիփսիմէ ի մէջ զգաստացելոց կուսանացն, որ և յորբունս հասեալ, տեսեալ ի նմա զհոգւոյն մեծանձնութիւնն՝ անուանէ զնա աղախին գոլ սրբոյ Աստուածածնին, և տայ զնա ուխտիւք և աղօթիւք ծառայել Աստուածածնին։ Արկանէ և ի նմին պարանոցն խաչ զսրբոյն Յակովբայ, զմածեալն տէրունական արեամբն, և կենաց փայտէն հատեալ վասն խնդրոյն Պատրոնիկեայ տիկնոջ, որ և ինքեան գոլ պահապան ի ձեռն նմին եղբօր Տեառն, առաւել փափաքմամբ և երկիւղիւ առեալ արկանէր ի պարանոց սրբոյ մեծին Հռիփսիմեայ, որպէս և յայնժամ յականջսըն Ռեբեկայ զգինդսն՝ հարսնանալ հօրն հաւատոց Աբրահամու, թէպէտև ոչ նման, այլ երկոքին ի խորհուրդ եկեղեցւոյ. և այս այսչափ։

«Այլ ի հասանել յուզման ժամանակին, վասն ազնուական ազգին և սքանչելատեսիլ գեղոյն, որ և յաշխարհի փայլէր հոգւով՝ խորհէին առնուլ ի պատիւ տանն Հռոմայեցւոց ի թագուհութիւն տիեզերապետութեան։ Եւ Գայիանեայ իմացեալ հոգւոյ ակամբ՝ առեալ զնա փախչի յԵգիպտոս յԱղեքսանդրիա. և անտի ելանէ յԵրուսաղէմ երկրպագեալ սրբոց տեղեացն որ անդ։ Եւ երթեալք ի յայրն՝ աղօթս և պաղատանս մատուցանէին առաջի սրբուհւոյն՝ օգնել կուսին վտանգելոյ և փախուցելոյ, որ եղև նորա աղախին ի մանկութենէ։ Եւ գնացեալ անտի ի Գեթսեմանի ի գերեզման Աստուածածնին, և անդ աղօթելով ասէր. Մայր լուսոյ կոյս անարատ, որ կուսութեանց ես վերակացու և սրբութեան օգնական, ընկալ զաղաչանաց աղօթս յանարժան աղախնոյս, և զորդի հոգւոյ իմոյ զոր սնուցի քեզ տուեալ աղախին՝ զգաստացեալ արդարացո արժանաւորապէս, և մի՛ տար փորձել օտարին, և մի՛ տացես աղտեղա-

նալ անձամբ ի ձեռն պիղծ Թագաւորացն, զի մի՛ ուխտս մեր որ առ. քեզ է՝ խափանեսցի։ Այլ յիշեա զպանդխտութիւն իմ և զծուփս ի կենցաղս մեր որ վասն քո, յիշեա և զչարչարանս որդւոյ քո և Աստուծոյ մերոյ, և ողորմեա մեզ, վասնորոյ զքեզ օրհնեմք։ Եւ երկրպագելով Աստուածածնին և բազում արտասուս հեղեալ, մնալով անդ ամսօրեայ ժամանակաւ։ Ապա տեսիլ երևեալ սրբոցն, և հրաման առեալ գնալ ի Հայք յերկիրն Արարատեան ի բաժին Թադէոսի առաքելոյն։ Եւ զպատկերն փայտեղէն, որ եդեալ է յերեսս իմ յաւուր փոխման իմոյ՝ զնա խնդրեսջիք, կատարեալ զընթացս ձեր արեամբ։

«Եւ դարձեալ անտի խնդութեամբ եկին յԵդեսիա քաղաք, և երկրպագեալ փրկչական պատկերին և լցան ուրախութեամբ, համարեցան տեսեալ զԲանն մարմին եղեալ։ Դարձեալ սքանչելի տեսիլ երևեալ յորդորէին ի ճգունս։ Եւ այլ կանայք ի նոցանէ մեկնեալք մնացին ի նմին քաղաքի ի մեծ եկեղեցւոջն Աբգարու, ի հիման սրբոյն Թադէոսի կրօնաւորեալք։ Սապէս և անտի ի Դարանաղեաց գաւառին կացեալ ի խորշ լերինն Սեպուհ կոչեցեալ, որ անուանեցաւ Մանեայ այրք։

«Աւելի քան զեօթանասուն հոգի զսրբոցն ասէ պատմագիրս ելեալ ընդ նոսա ի Հռոմայեցւոց քաղաքէն, որք բնակեցան ի տեղիս տեղիս։ Իսկ զտեղին կալեալ այլոց քերցն, և քոյր Գայիանեայ Եւգոյի անուն, միաբանեալ քերբքն կատարեցան բարի վկայութեամբ ի Դիոկղետիանոսէ ամբարշտէ, զթոյնս չարութեանն ի նոսա թափելով, որք եղեն վկայք Քրիստոսի, յաղագս ոչ ըմբռնելոյ ի վարկս մահու զմեծ առաքելուհին։ Եւ բազում տառապանօք գնացեալ եկին ի Բզնունեաց գաւառ, ի քաղաքն Խլաթ, երեկօթս արարեալ։ Եւ անտի փոխին, և գնացեալ ի գաւառն Մոկաց, Սուրբ Խաչ կոչեցեալ տեղի, որ և մեծ սքանչելիս կատարեաց Աստուած ի ձեռն նոցա պատուական սուրբ Խաչիւն Եսայեայ և Դանիէլի, որում ես և դու հասու, և մեզ երկրորդել զի՛ է։ Կճաւն կոչեցեալ տեղի՝ դիւաց լցեալ պաշտամամբ, հասեալ անդ առաքելանման քահանայիցն և սրբոց կուսանացն՝ զընդդիմամարտն արգելուին զձիոցն, յորում զայրագնեալ դիւացն՝ դիմեալ ի վերայ խեղէին, ծռէին, պնչատէին զպաշտօնեայս իւրեանց, որ և անդ առաքելանշան քահանայքն հալածեալ զնոսա, և քանդեալ զպաշտամունս նոցա՝ բժշկէին զխեղեալսն. վասնորոյ տեղին կոչեցաւ Կճաւ, յորում թողու զխաչն իւր սուրբն Գայիանէ ախոյեան դիւաց որ էր աւազակին, որ և զտեղին յետոյ հաստատէ վանս սուրբն Գրիգոր։

«Եւ վասն յայտնի անուանն նոքա գաղտ գնացեալ ընդ մէջ

Կորդուաց ընդ լեառն Սողոփ, ի Բերկրացւոց գաւառին, և ախտ աչացաւութեան զնոսա տագնապեալ. և կացեալ յաղօթս՝ երկու աղբերք բղխեցան, որ է ժանգ ջրոյն կարմիր և սպիտակ, և մինչև ցայսօր օգնէ աչացաւաց յանուն սրբուհեացն։ Բայց այս լերին առ յԱսորւոց, թէ ի Նուազել ջուրցն հեղեղաց՝ եհաս տապանն ի գլուխ լերինն, որ է Սարարադայ, և ընդ մէջ անցեալ աղոցաձուկնն արգելու զնաւն. և անուն քաղաքագեղջն կոչեցաւ Թըմնիս, այսինքն թէ ութ ոգիք ելին ի տապանէն։

«Իսկ սրբոցն յապահովացեալք՝ խրճիթս շինեալ բնակեցան։ Եւ անտի գնացեալ և օթևանս արարեալ ի վտակս գետոյն մօտ ի կամուրջն ի կողմն Տմորեաց, ի ծառաւէտ ընկուզուտ տեղիս։ Եւ անտի փոխեալ եկանեն ի Հայաստան գաւառ, ի խորին խորշ լերին Մըշկունեաց։ Ի սմա ասի այծեմունս մշկապորտս լինել, ուր և բազում ուրուկս հալածականս գտեալ՝ բժշկեն զնոսա սուրբ Խաչիւն ընտրեալ քահանայքն, ուր և ի Տեառնէ աղբիւր շնորհեալ նոցա. և յայսմ տեղւոջ կային ծեր կանայքն մինչև ցօր կատարման իւրեանց։ Եւ չուեալ անտի և կացեալ յեզր Բժունեաց՝ կային անդ բազում աւուրս. և անտի փոխեալ բնակեցան յանկոյս գետոյն մօտ ի յակն յորդաբուխ, յորդորեալք ի շնորհաց Ս. Հոգւոյն, բազում աւուրք անցուցանելով, զուարճացեալք ի տեղւոյն բարեհամբաւութիւննն։ Եւ ապա աստ այլք ի նոցանէ կացեալք, որ անուանի տեղին Սուրբ Տիկին։

«Եւ անտի յառաջ անցեալ, ուստի հոսի գետն բովանդակ, որ փոքրագոյն չար ջուրքն հոսեալ ի լերանց Կանգուարայ, որ կոչի Ագռաւաքար. և գարնանային ուղխքն գետացեալ գան յօժընդակութիւն գետոյն մեծի որ կոչի Տիգրիս, հասին ի տեղի մի և գտին սակաւ ինչ քրիստոնեայս, ձևանշան ունելով զպատկեր Տիրամօրն, որում երկրպագեցին ուրախացեալք, և տային գոհութիւն սրբուհւոյն։ Եւ սակաւ աւուրս կացեալ, ոչ կամեցեալ հաւատացեալքն, երկուցեալք ի կասկածանացն, և նոքա գնացին ի գլուխ լերինն Պաղատոյ, զոր առէին սաստիկ յոյժ ի նմա լեալ դիւացն, տուն Արամազդայ և Աստղկան մեհարէին։ Եւ յաճախ պաշտամամբք տօն կարդային որ է Պաղատ։ Եւ անտի դնացեալ ի խորաձոր զառ ի ի վայր լեռնէն յարեգականն կոյս, սակաւ մի առ ի կողմն Հարաւոյ, ի կատար լերինն որ ի վայր իջանէ, տուն կրակի, անյագ հրոյ, անդադար այրման աստուածոցն. և քարինս հոսեալ յակն յորդաբուղխ աղբերն, որ բղխէ յոտն լերինն, որ է յառաջս խորավիմին, որ կոչի տեղին Բութ։ Քանզի վառէին զկրակն քոյրն, և զաղբիւրն եղբայրն։

«Եւ յայրս քարին որջացեալ կային վիշապք երկու, դիւացեալք և սեւացեալք, որոց աղջիկ կոյս և պատանիս անմեղս զենուին։ Այնոցիկ արեամբն զուարճացեալ դեւքն և բագնօքն, հրովն և աղբերբն՝ ահագին իմն տեսիլ և փայլումն և թնդմունս և կայծմունս գործէին։ Եւ ի մէջ խորաձորոցն օձք և կարիճք լի թունաւոր մահաբերին լցեալք։ Անդ հասեալ սուրբ կանանցն, և աղօթիւք և արտասուօք ի յերկինս հայեցեալք, առեալ զսուրբ նշանն և ի վերայ կացեալ աղբերն՝ և փախստական եղեալ դիւացն ի բագինն անկանէին, վայ զվայիւ աղաղակեալ։ Եւ ի լեռնէ ի լեառն ոչ այլ ինչ լսիւր, բայց վայ զվայիւ ճիչեալ։ Եւ նոքա ընդ մէջ ձորոյն անցեալ, օձք մարմնաւորք քարացեալք կան մինչև ցայսօր։ Եւ ի բագնացն փախուցեալ դեւքն անկանէին յերկիրն Մարաց։ Եւ զպատկերն փշրեալ զօրութեամբ սուրբ Խաչին. զոր տեսեալ գեղջն՝ հաւատացին ի Քրիստոս ի ձեռն սուրբ երանելեացն։

«Եւ անտի ելեալ և ընդ հիւսիսով իջեալ՝ եկին ի գիւղն որ կոչի Կորիթ։ Զկուռսն փշրեցին, և զօձսն թունաւորս սպանին նշանաւ սուրբ Խաչիւն, և զաղբիւր դիւացն ցամաքեցուցին, զոր և յետոյ զտեղին սուրբն Գրիգոր շինեաց եկեղեցիս երկուս։ Եւ ի Կորիթ փայտեղէն սեղան կազմէ, և նշան թողու անդ զգօտին և զգաւազանն իւր։ Իսկ սրբոցն ի Տոսբ գաւառ ելեալ՝ զսուրբ նշանն թողուն հանդէպ Վանի, ի հարաւակուսէ լերինն, փոքրագոյն խրճիթս շինեալ վանաց. և եդին անդ վասն կասկածի հալածանաց ի վերայ կացելոց։ Եւ անդ ի լեառն Վարագ ամրացեալք, զի լուան խնդիր լինել ինքեանց, ցան և ցիր ի խորշ լերինն բնակեցան, արարեալ իւրեանց գետնափոր դադարս։ Այսպէս երկուք ոմանք ի քահանայիցն սրբոց բնակեցան ի նմին տեղւոջ մինչև ցօր կոչման և կատարման իւրեանց առ Քրիստոս։ Եւ տեղիք նոցա կոչին Ուրբաթայրք. քանզի ի յուրբաթէ յուրբաթ մատուցանէին զսրբութեան պատարագն և բաշխէին արժանաւորապէս սուրբ կանանցն զմարմին և զարիւնն Տեառն։... Վասն կատարման և չարչարանաց և նահատակութեան երանելեացն յԱյրարատեան գաւառ ի Վաղարշապատ քաղաքի՝ ուսցիս ի յԱգաթանգեղեայ պատմութեանցն»։

Այս է Հռիփսիմեանց համբաւեալ պատմութիւնն, որ ի հին և յարդի գիտնոց ազգին կ'ընծայուի Խորենացւոյն իբրև «ստոյգ պատմութիւն ճանապարհորդութեան նոցա», թերևս նաև իբրև արժանի գործ հանճարոյն և հմտութեան քերթողահօրն։ («Պատմ. Հռիփս. Պատմութիւն գալստեան Հռիփսիմեանց ի Հայս՝ ստուգագրութեամբ (.՞) ճանապարհորդութեան նոցա»։ Հայկ. Բառ. Նախադրութիւնք, էջ 13)։

Ոչինչ ընդհատ քան զսոսա անհարազատ և անվայել են Խորենացւոյն լեզուին, հմտութեան և ճաշակին՝ ճառքն Հռիփսիմեանց և Վարդավառին, յետին և համբակի գրուածներ, ցուրտ, անիմաստ և անհեդեդ, անարժան յընթեռնուլ ոչ ըստ լեզուին միայն, այլև ըստ իմաստին։ Առնունք յօրինակ երկու հատուած, մին՝ ի ճառէն Հռիփսիմեանց, և միւսն ի ճառէն յաղագս Վարդավառին։

*Հռիփսիմեանց ճառէն.* «Այսօր ցնծութիւն երկնի և երկրի, և աւետիք մեծ երկնաւոր շնորհաց պայծառ լուսով շրջափայլեալ ի տան Թորգոմայ ի հաւատացելոց ազգէ ի հոգիս ցնծութիւն երկնի, զի լոյսն կենդանի, որ փայլատակէր յերկնից ի Հռիփսիմեանց՝ ի սմա փայլակնաբորբոք ճառագայթիւք բոցափայլեաց, զանիծից պարաբառնալ զփուշ, և վկայական արեամբ նորոգեալ զերկնայինն ի սմա ծաղկեցուցեալ արդարութեան բողբոջս բանաւոր բուսոց բուրեալ զանուշահոտութիւն սաղմոսաց. ի սմա հնչեն փառք թագաւորին անմահի. զի յերկրի ընկալաւ հարսն աստուածազգեաց զվայելչականն եդեալ պսակ, զգեցեալ զլոյս և զանմահութիւն, և օրիորդք խաչազգեացք ընդ նմա ծիրանազարդեալք կուսական արեամբքն, ընդ երկնագումարն անցանելոց պարս սրովբէիցն մտեալ ի սրբութիւն սրբոցն յառագաստն լուսոյ առ Բանն փեսայացեալ, կայ ընդ աջմէ նորա դշխոյն սուրբ յոսկեհուռն պսակեալ, և զօրք հրեշտակաց փափաքեալ իջանեն ի հոտ անոյշ ծաղկաձև վարդագոյն արեան վկայիցն, և հողեղէնն ի հրեղէնն միացեալ, որ զվկայիցն յաւէտ հրաշացուցանէ հանդէս»։

*Վարդավառի ճառէն.* «Աստանօր ցուցաւ թէ արդ աւար է տօնս... առաքինութեան ի սմա լուսերանգ և յուսահոտ բոցաւերև վարդիւք հարսնազգեստ պսակեալ և հրճուեալ։ Սա առաջին յեկեղեցւոջ օրինադրեցաւ յառաքելոցն տօն աւետաբեր, որ ոչ մտանէ ի շրջանս ընթերցուածոցն ընդ այլսն, յորս աստուածային տնօրէնութեանն վերաձայնաբար տօնի խորհուրդ մարգարէիւք նախապատմեալ, զի ոչ զանցելոցն որպէս զնոսա, այլ զհանդերձեալ յաւիտենին յինքն բարձեալ ունի մշտապայծառ փառաց գերակայութիւն յարազուարճ ցնծութեամբ, որ և ոչ մարգարէքն ծանեան զայնս, զոր անդն պատրաստեաց Աստուած սիրողաց ինքեան. զի սա ըստ ութերեակ աւուրն որպէս առաջինն այն և վերջին մշտընջենահոս լուսով անթառամ պսակեալ տօն յաւետահրաշ և ճառագայթաւէտ, սկիզբն առեալ ի դատողական ատենէն, և տևէ մինչև յանսպառ մշտանորոգ յաւիտեանսն, զտօնասիրացն բացախմբից միացեալ պար յիւրն լուսաթաղանթ առագաստեալ ծոց, զանզրաւական ուրախութեանցն տրոհելով աստ մաքրեցելոցն յարատևողութիւն

ընդ Ե-ին աստուածացեալ եղելոց»։ Հայերէն լեզուի ո՞ր յետին աշակերտն է, որ կարդալով այս երկու հատուածներն՝ չհամարէր զնոսա ծնունդ խակ մտաց տգէտ իմաստակի մանաւանդ՝ քան Խորենացւոյ հասուն գրչին, թէև գտնենք, ինչպէս ոմանք կը գտնեն կարծելով արդարացունել, թէ ի պատանեկութեան գրած է Խորենացին այս ճառերն։ Բայց այս ճառք, որ Երզնկացւոյն դարը կը հոտին՝ ոչ պատանեկի գործ են, այլ տգէտ վարդապետի քարոզ, խօսուած ռամիկ ունկնդրաց, որոց մին հարցուելով երբեմն, թէ ինչպէս էր քարոզն որում ունկնդիր եղած էր՝ պատասխանեց. Չհասկցայ, բայց շատ գեղեցիկ էր։

Գիրք Պիտոյից, որ մեր յետին դարերու տգէտ պատմիչներէ և արդի գիտուն բանասէրներէ այնպէս մեծ նախանձաւորութեամբ կ'ընծայուի Խորենացւոյն, այն է համբաւեալ հեղինակին Հայոց Պատմութեան՝ է բոլորովին օտար այն պատմութեան ընտիր մասերուն լեզուէն և ոճէն։ Պէտք է գիտնալ, որ յետ անկման հին յունական ճարտարխօսութեան ելաւ նոր դպրոցական կամ ակադեմական ճարտարխօսութիւն իբրև հռետորական արուեստ, որոյ ուսման համար յօրինեցան առանձին մատեանք։ Այսպիսի մատեան մի յօրինեց ի սկզբան Դ. դարուն կամ ի վերջ կոյս Գ-ին Ափթոնիոս Անտիոքացի, հռետոր յոյն, «Կանուխ հրահանգ» (Προγυμνάσματα) անուն, որ երկար ժամանակ գործածուեցաւ ի դպրոցս։ Ափթոնիոսի նախանձորդ, կամ թերևս նորին դպրոցէն էր Լիբանիոս, նոյնպէս Անտիոքացի, որ իբրև հռետոր՝ մեծ համբաւով կ'ուսուցանէր Կոստանդնուպոլիս, Անտիոք և այլուր։ Թէպէտ այս ճարտարխօսութիւնն չունէր հին յունականին յարգը, կը համարուէր մանաւանդ ապականիչ ճշմարիտ ճարտարխօսութեան, և հռետորք կը կոչուէին սոփեստէս (իմաստակ) մանաւանդ քան հռետոր՝ բայց և այնպէս բանիբունք ոմանք ի յոյն հարց, ինչպէս Բարսեղ, Ոսկեբերան, Նազիանզացին, ելան այն դպրոցներէն։ Ափթոնիոսի մատենին, կամ ուրիշ նմին նման յունարէն գործոյ մը թարգմանութիւն կամ նմանութիւնն է մեր Պիտոյից գիրքը, որ թէպէտ սոփեստական գրուած՝ կարէր լինել մեծապէս օգտակար լեզուին՝ եթէ տրուէր ազգին իւր հարազատ լեզուաւ և ոչ այն խժական բարբառով։ Պիտոյից լեզուն ամենայն հաւանականութեամբ ունի Է. կամ Ը. դարուն Սիւնեաց դպրոցին մթին և անպիտան հելլենաբանութիւնը, ուստի եթէ հարկ է ընծայել զայն, ըստ անուանն, Մովսիսի ումեմն՝ աւելի բանաւոր է ընծայել Սիւնեցւոյն Մովսիսի, վարդապետին Ստեփանոսի Սիւնեցւոյ, քան կարծեցեալ հեղինակին Հայոց Պատմութեան, այն է Խորենացի կոչուած Մովսիսի։ Զամչեան, յետ յիշելոյ զՄով-

սէս Սիւնի, թէ «Էր յաւուրս սորա (այսինքն Թէոդորոսի Քռթենաւորի) Մովսէս եպիսկոպոս Սիւնեաց, վարժ յիմաստս Հելլենական դպրութեանց և առաւել ևս ի քերթուածս Հռետորական Հանգիսից հայկական լեզուի, մինչև կոչել նմա քերթող քաջ, և յոմանց անուանել քերթողահայր, իբր երկրորդ զկնի երանելւոյն Մովսիսի Խորենացւոյ»՝—կը յաւելու. «Սա յօրինեաց զքերականութիւն և զճարտասանական գիրս. գրեաց և բազում ճառս հռետորականս ճոխութեամբ, մինչև ի կարծիս լինել ոմանց յայժմու ժամանակիս, թէ սորա իցէ արարեալ և զայն իմաստալից գիրքն Պիտոյից, քանիւ Թէոդորոսի Քռթենաւորի. բայց այս չերևի հաւանական»։ Այլ թէ ընդէ՞ր՝ չտար պատճառը. անշուշտ վասն զի ոչ այլ ոք բաց ի Խորենացւոյն էր կարող թարգմանել կամ յօրինել այնպիսի «իմաստալից» մատեան։ Այս դատաստան ներելի է Չամչեանի ժամանակին։ Հեղինակն «Պատմութեան հայերէն դպրութեանց», որ գիտէ, թէ Ելլադա Պիտոյից պէս գրուածներ «աւերիչ և խանգարիչ կը սեպէր բուն և հարազատ ճարտասանութեան, և ընդհանրապէս տափեստէս կամ իմաստակ անունը կու տար անոնց», կը խոստովանի ևս «ոճոյ զանազանութիւնը որ յայտնապէս կը տեսնուի Պիտոյից գրոց և պատմագրութեան մէջ»՝ կը խղճէ սակայն համարել զայն անհարազատ գործ Խորենացւոյն, վասն զի «ազգային ընդհանուր աւանդութիւն մը, ասէ, դէմ կ'ելլէ այս կարծեաց, որ (ընթերցիր՝ այս կարծեաց դէմ կ'ելլէ ընդհանուր ազգային աւանդութիւն մը, որ) Պէտքը Մովսիսի հարազատ կը համարի»։ Ո՞ր աւանդութիւնն է այս։ Զենք գտներ ամենևին յիշատակութիւն ո՛չ ժամանակակից և ոչ մերձաւոր ժամանակաւ՝ որ զՊիտոյիցն ընծայէ Խորենացւոյն՝ իբրև ծերագունից ծանօթ և առհասարակ ընկալեալ աւանդութիւն. այն զոր հեղինակ մեր կը կոչէ «ընդհանուր ազգային աւանդութիւն»՝ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ կարծիք քան զՄովսէս հինգ կամ վեց հարիւր տարի յետոյ ապրող ոգէտ հեղինակի։ Պիտոյից վերջաբանին մէջ միայն ի վերնագրին կը գտնենք Մովսէս անուն ոմն, յիշուած երկրորդէ մը, թերևս յետին օրինակողէ, իբրև «քերթող», ոչ իբրև Խորենացի.—«Մովսիսի քերթողի, արարողի Պիտոյիցս տառի, խրատաբանութիւն յորդորական առ Թէոդորոս ոմն աշակերտ իւր, նախակրթիլ քաջուշիմն վարժիւք յիմաստս ճարտասանականս արհեստիս»։ և ի ստորև բուն հեղինակէն ունինք մութ իմն ակնարկութիւն յանուն իւր և աշակերտին Թէոդորոսի.—«Այս է նախադուռն կրթարանիս և ապարէզ ընթացայս իրի հռետորական հանդիսաւորաց, համանգամայն ուշեղագոյն պարմպնեացն։ Ի յայս ներակրթեալ երկասիրաբար՝ հետևելով վարժա-

պետիս քովին Մովսիսի՝ բոլորեսցես քեզ պսակ հոգեծաղիկ վարսագեղ, ունել ի ներ անձինդ, ով Թէոդորէ։ Զայս առադրելով գաղափար, յօրինեալս առասպելականս կլթարանիս ճարտարագոյնս՝ Մովսէս քեզ Թէոդորի սաղապելով ի սոյն մէտ երանեսցիս»։ Եթէ հոս յիշուած Մովսէսն, վարժապետ Թէոդորոսի, է պատմական անձն և մատենագիրն՝ մեծ հաւանականութիւն կայ թէ է Մովսէս Սիւնի, քան Մովսէս Խորենացի, և Թէոդորոսն մեծ հաւանականութեամբ է Քռթենաւորն, որում, թող զանունն՝ կը յարմարի նաև ժամանակն. և Քռթենաւորի լեզուն և ոճն չեն աննման լեզուին և ոճոյ Պիտոյից։ Բայց հեղինակն Պատմութեան հայերէն դպրութեանց ունի աւելի զօրաւոր պատճառ ընծայելու Պիտոյից գիրքը Խորենացւոյն, այն է «ժամանակաւ կրտսեր պատմչի մը, Կիրակոս Գանձակեցւոյն վկայութիւնը, որ յայտնապէս կը գրուցէ. «Սքանչելին Մովսէս (շարագրեաց) զՀայոց պատմութիւնն ի խնդրոյ Սահակայ Բագրատունւոյ... և զՊէտքն ի խնդրոյ Թէոդորոսի ումեմն» (ընթերցիր՝ ուրումն)։ «Իրեն ձայնակից է—կը յաւելու հեղինակն մեր—Ասողիկ. —Ի ժամանակս (Գիւտայ կաթողիկոսին) էր մեծ փիլիսոփոսն Հայոց Մովսէս, որ զճարտասանական արուեստ ի գործ առնու ի Հայս։ Նոյնպէս ալ, թէպէտ աւելի անորոշ խօսքերով՝ Արծրունին, Գրիգոր սարկաւագապետ և այլք, որք միաբան անուանի փիլիսոփոս և քաջ հռետոր կը կոչեն զինքը, և քերթող և քերթողահայր»։

Եթէ վկայութիւն ոգիտի ուրուք, որպիսի է Գանձակեցին, բաւական է հաստատել ինչ որ հինգ կամ վեց դար յառաջ է, ընդէ՞ր բաւական չհամարինք զվկայութիւն նոյնչափ ոգէտ, թէպէտ սակաւ ինչ աւելի նոր հեղինակի, այն է Առաքել վարդապետի, որ ևս աւելի իրաւամբ «Անյաղթին կ'ընծայէ Պիտոյից գիրքը. —Դաւիթ Անյաղթ հինգ գիրք գրեաց. զՍահմանքն, զԲարձրացուցէքն, զՊէտքն, զՄեկնութիւն քերականին և Արիստոտելի»։ Առաքել կու տայ այս վկայութիւնն անտարակոյս մեր դպրութեան այն երկու փառաւոր յիշատակարանաց, Պիտոյից և Դաւթի լեզուներուն, որ ոչ այլով իւիք կը տարբերին իրարմէ՝ եթէ ոչ աւելի կամ նուազ այլանդակութեամբ։ Որովհետև օրինակն զօրաւորագոյն է քան զբան՝ հոս դնենք մէն մի հատուած իւրաքանչիւրէն, այն է Խորենացւոյն Պատմութենէն և ի Պիտոյից, ընթերցողաց թողլով զընտրութիւնն, թէ հնա՞ր է արդեօք երկու այսչափ տարբեր ոճեր ընծայել միևնոյն հեղինակի. քանզի լեզուն, եթէ միայն ընթերցողն խելամուտ է տարբերութեան էական կէտերուն՝ է մին յէական պայմանաց դատելոյ և որոշելոյ մատենագրութեանց ժամանակն, ուստի և հեղինակը։

Հատուած ի Խորենացւոյն. «Բայց անցցուք այսուհետև յա-

ղագս Տիգրանայ և որ ինչ ի նմանէ գործք...Զի ո՞ ոք ի ճշմարիտ արանց և որոց ի բարս արութեան և *իմաստութեան* սիրելութիւն կայցէ, սորա յիշատակօքն ոչ զուարճասցի, և յորդորեսցի այսպիսի այր լինել։ Արանց կացեալ գլուխ և արութիւն ցուցեալ, զազգս մեր բարձրացոյց, և զընդ լծով կացեալսս՝ լծագիրս և հարկապահանջս կացոյց բազմաց. մթերս ոսկւոյ և արծաթոյ և քարանց պատուականաց և զգեստուց և պէսպէս գունոց և անկուածոց, արանց հասակաց և կանանց միանգամայն բազմացոյց, որով տգեղագոյնքն իբրև զգեղաւորս երևէին սքանչելիք, և գեղաւորքն ըստ ժամանակին առհասարակ դիւցազնացեալք։ Հետևակամարտքն ի վերայ ուսոց ձիոց բերեալք, և պարսաւորքն առհասարակ դիպաղեղունք, և շերտաւորքն ի սուսեր և ի տէգ նեզակի վառեալք, մերկքն վահանօք և զգեստիւք երկաթոյ *պարածածկեալք*. որոց ի մի վայր հասելոց բաւական էր տեսիլն միայն, և որ ի *նոցայն* պահպանակաց և զինուց փայլմունք և շողիւնք՝ զթշնամիսն *արտահալածել*։ Խաղաղութեան և շինութեան բերող, իւղով և մեղու զհասակս ամենեցուն պարարեալ» (Խոր. Ա. ԻԴ.)։ Ահա Խորենացւոյն լեզուն, որ իւր առանձին ձևովն և սակաւ ինչ մթութեամբն՝ է տակաւին հայերէն, յայտնի և դիւրիմաց։

Բերենք նմին նման հատուած մի և ի Պետոյէց. տեսնենք թէ ունի՞ նմանութիւն առաջնոյն ոճին և պարզութեան։

«Զմեծ հանդէս քաջարութեանցն գովել, և մանաւանդ իմաստասիրագոյն և անմախասէր դիտաւորութեամբ, ստուգապէս որպէս ինձ և ամենեցուն թուի՝ յոյժ գերազանցեալ ահա գեր զընաւ ընդ արեգակամբս ի մարդկայինս ազգէ արութեամբ միայն յակոնականս անցեալ գացի ազն»։ Բան մը իմացա՞ւ արդեօք ընթերցողն. թող կարդայ երկիցս, երիցս և առաւել եթէ կամի։ Երթանք յառաջ։ «Զոյց ուրումն զլայնագոյն և զանպարագիր կալուածս նոցա տեսանելով վայրացն՝ զարմանալով հանդերձ մատուցեալ հայցէր պատասխանիս, թէ ո՞ւր իցեն կէտահարութիւնքն սահմանաց մայրաքաղաքին նոցա Սպարտայ։ Եւ նորա զնիզակն ցցեալ՝ բայ. Ցայսմ վայրի։ Եւ կարի քաջ լի իմաստութեամբ ընձեռեալ բան. վասն զի ո՞ ասասցէ ոչ գիտել, զի որք ի զէնս են հրահանգեալ, և միշտ նոքիմբք ի դէմս թշնամեաց յառաջանան նահատակութեամբ, ստոյգ աճեցունս օրըստօրէ գործելով զբարեփառութեանց իշխանութիւն՝ այլև ընդարձակս ևս և անոլորտս զիւրեանցն յիրեցուցանեն սահմանս կոչեցեալ։ Ըստ որում ապա և տիրել վայրացն, թերևս բոլորեցուն իցէ ծանօթագոյն. զի ոչ հաստատեալ ինչ բերեալ լինին նշանօք, ոչ փոսիւք ինչ փորելովք, կամ հողաբլուր ինչ յերկրէ

յարուցանելով, և ոչ արձանս ի քարանց կանգնելով, և ոչ բնաւ այլով ինչ սովին օրինակաւ. բայց ճշմարտապէս ասել, թէ մենամարտիկ նահատակացն արգասիւք զանսխալագոյնսն մանաւանդ ունել հաստատութիւն։ Տինա այնպիսիքն ոչ միայն զիւրեանցն վիճակեալ կալուածս բաւական կարծեն հզօր ունել ձեռամբ, այլ և յոլովս անգամ զհակառակամարտ թշնամեացն զցանկալիս բուրաստանացն և զարգաւանդահողն վտարեն զերկիր։ Եւ համանգամայն իսկ զկապուտ ազգաց և զաւար ոսկւոյ և արծաթոյ և պատուական քարանց յինքեանս հաւաքելով, ամենավայելուչ բարեբախտութեամբ զկենցաղոյս անցուցանեն յաւիտեանս։

Կարծենք բաւական է այս՝ ցուցնել ամբաւ խոէրը, որ կայ ի մէջ լեզուին և ոճոյ Խորենացւոյն և սորա։ Բայց որպէս զի լաւ ևս հասկցուի այս «իմաստալից» մատենին պատուականութիւնը՝ դնենք միւս ևս օրինակ, ուրոյ պարզ իմաստն է այս, յստակ հայերէնով. «Ցայնչափ բազմութեան վիպասանաց ապաքէն արժանի մեծի գովութեան է Հեսիոդոս վասն առաւել հմտութեանն, մինչև իշխել նմա ասել ուրեք յերգս իւր զանձնէ՝ թէ քան զՀոմերոս իսկ իցէ գեր ի վերոյ։ Արդարև սա է, որ զգեղեցիկ յօրինուածոյ երկնից և երկրի և զվայելուչն խառնուածոյ տարերաց առ միմեանս խօսեցաւ զառաջինն բազում հմտութեամբ։ Հանդերձ այսու և հանգամանաց մշակութեան էր նա տեղեակ, և այլոց ևս իրաց իրաց, որ շահաւորքն են կենաց մարդկան։ Խօսեցաւ և բազում բանս խրատուց, յորոց նշանաւոր է այն՝ զորմէ ճառել առաջի կայ մեզ։ Ցիմար է, ասէ, որ ընդ աւագագոյնս քան զինքն ի վէճ գալ մտաբերիցէ»։ Մեր իմաստալից մատեանն սապէս կու տայ մեզ այս պարզ իմաստը. «Հռչակելումն յոյժ ծայրագոյն պատուականութեամբ Եսիոդեայ՝ յամենավայելուչն քերթողաց պարս, արժանաւոր է առաւել միշտ զհրաշափառագոյն նազաբանութիւն նմա հատուցանել վարկ։ Որ գեղեցկատարփելի իմն և յարդարուն հմտութեամբ․քն յառաջեալ՝ զբոլորիւքն գերազանցեալ քերթուածովք, այնքան մինչ զի արձանակեալ ուրեմն յիւր դիւցազնական տաղսն՝ գեր ի վերոյ զինքն ասաց լինել գեր զհռչակելին և զվեհն ամենայն քերթողաց Հոմերոս։ Եւ մանաւանդ ըստ այնմ ևս, զի զերկնի բնութիւն և զերկրի, միանգամայն զբովանդակ տարերցդ առ իրեարս յարդարեալ յարմարագոյն խառնումն՝ քննութեամբ պարատեսեալ զեկոյց բոլորեցուն։ Այլ ընդ նմին և մշակականն հանգամանաց տեղեկութիւն, և զյոլով այլ ևս զկենցաղօգտակարագոյնս աւորժակացն։ Յորոց ի մի ի նորա գիտնական վերաբերեալ խրատուց՝ առաջիկայս իսկ մեզ հարցաքննեալ յայտնեսցի, զոր ասէս, բայ. Տամ-

բուշ է՝ որ ընդ վճհագունին քան զինքն բերէ հակառակութեան վէճս։ Թէ յունարէնէ թարգմանութիւն է այս հատուած՝ յայտնի է և՛ կարգէն և բառերէն։

Կը մնայ մեզ խօսել զԱշխարհացուցէն։ Աշխարհացոյց կը նշանակէ հոս տիեզերագրութիւն, այսինքն արդի աշխարհագրական (երկրագրական) ուսման աստեղագիտական մասը, որոյ առաջին յօրինիչ եղաւ Կղաւդիոս Պտղոմէոս աստեղագէտ յոյն, որ ծաղկեցաւ յԱղեքսանդրիա ի սկզբան Բ. դարուն, և թողուց այլևայլ աշխարհագրական գործեր։ Այս այն Պտղոմէոս է, յորոյ անուն կը կոչուի հին արեգակնային դրութիւնն, զոր փոխանակեց Կոպեռնիկեանն։ Իբրև երկու դար յետոյ, դէպ ի վախճան Դ. դարուն՝ Պապ կամ Պապպոս աղեքսանդրացի առնլով Պտղոմէոսէ յօրինեց աշխարհագրութիւն, որոյ լատիներէն համառօտութիւնը միայն ունինք, բնագիրն է կորուսեալ։ Խորենացւոյն Պատմութեան մէջ կայ Պտղոմեայ յիշատակութիւնն.—«Որք բազմաշրջութեամբ հրամանաւ Պտղոմեայ ասպարիսօք զընակութիւն մարդկան չափեցին» (Խոր. Ա. Լ.)։ Այս յիշատակութիւն, որ կը թուի եկամուտ, քանզի չունի բնաւ յարմարութիւն տեղւոյն՝ առիթ տուած է կարծել Խորենացւոյն Պատմութեան հեղինակն յօրինիչ Աշխարհացուցին։ Բայց այս գործն է, որպէս ինքն իսկ հեղինակն ասէ՝ թարգմանութիւն քաղուածոյ, ոչ ուղղակի ի Պտղոմեայ (թէպէտ հեղինակն ուրեք ուրեք կը յիշէ զՊտղոմէոս), այլ ի Պապայ. քանզի ի Պտղոմեայ առնուած հատուածք են յայլմէ աղբերէ, համառօտուած և փոխուած, հաւանականապէս ի Պապայ, ինչպէս կու տայ կարծել ինքն իսկ հեղինակ աշխարհացուցին. «Յայլեալ գոտւոյ, ասէ, ի հարաւակոյս... չէ ուրուք զեզր եւկրի տեսեալ կամ գիտացեալ, որպէս ասէ Պտղոմէոս... յորոյ ինքնագիր (ըստ այլոց՝ երկնագիր, կամ երկրագիր, կամ երկրագիր, որ լաւագոյն ընթերցուածն է) բոլորակին տիեզերագրութեանցն առեալ (է) Պապայ աղեքսանդրացւոյ համառօտաբար, յորմէ մեր ծայրաքաղ օրարեալ գրեցաք զմեծամեծսն և զնշանաւորսն միայն»։ Այլուր դարձեալ. «Սկսցուք ըստ Պապայ Աղեքսանդրացւոյ երկրագրութեանն, որ (է) ըստ երկրագիր բոլորակին Կղաւդեայ Պտղոմէոսի տիեզերագրութեանցն», և այլն։ Հեղինակին միտքն է այս. Պտղոմէոս յօրինած էր իւր տիեզերագրութիւնն (cosmographie) ի հարթ բոլորակի, ուր կը նշանակէր իւր աստեղագիտական տեղեկութիւններն զկիսոյ երկրիս՝ որ յայնժամ ծանօթ էր։ Պապ այս տիեզերագրական բոլորակին համեմատ յօրինեց զիւր երկրագրութիւն, յորմէ մենք քաղեցինք համառօտիւ։ Իսկ թարգմանչին և ժամանակին կամ դարուն համար չէ դժուարին որոշել,

թէ Աշխարհացոյցն ունի արդարև միջին իմն ոճ, և չէ նման ըստ լեզուին ո՛չ Պիտոյից և ոչ միւս գործոց ընծայելոց Խորենացւոյն. ուրեք ուրեք, մանաւանդ ի սկզբան ցուցնելով նմանութիւն ինչ ոճոյ Պատմութեան Խորենացւոյն՝ կ'առնու տակաւ Ի-էն մինչև Թ. դարու Թարգմանութեանց անհարթութիւնը և մթութիւնը, մինչև լինել բազում ուրեք անոճ և անիմաստ։ Թէպէտ ի նմին հեղինակէ՝ սակայն աւելի պարզ և ընտելական հայերէն է քաղաքական մասն, ուր ըստ բաժանման Պապայ կը խօսի երկրիս գլխաւոր մասանց վրայ, այն է՝ Եւրոպոյ, Լիբիայ (Ափրիկէ) և ընդհանուր Ասիոյ, հանդերձ իւրաքանչիւր բաժանմամբք, ոչ աննման ոճոյ արդի բնական և քաղաքական աշխարհագրութեանց, թէպէտ համառօտ յոյժ, յաւելլով և յանձնէ համառօտ աշխարհագրական տեղեկութիւններ, մանաւանդ Հայոց, Վրաց և Աղուանից վրայ ըստ քաղաքական հանգամանաց՝ զոր ունէին այս երկիրներն Ե. դարէն մինչև Ը. դար։ «Եւ արդ՝—ասէ հեղինակն ի վախճանի աստեղագիտական մասին—որովհետև բովանդակեցաք զհասարակախօսութիւնն (այսինքն ընդհանուր ուսումնական մասը), այսուհետև ըսկսցուք պատմել աշխարհ աշխարհ առանձինն ըստ դրից տեղագրութեանց Պապայ աղեքսանդրացւոյ, սկիզբն արարեալ յարևմտեայ յՈվկիանոսէ (այն է ի Միջերկրականէն) ի ծայրէն Սպանիոյ աշխարհին» (իմա ի ծայրէն, ուր է Սպանիացւոց աշխարհն)։

Այս քաղաքական կամ պատմական մասն է մանաւանդ, որ կը ցուցնէ թէ հեղինակն չկարէ լինել յառաջ քան զԷ. դար, քանզի կու տայ երկրագրական (աշխարհագրական) և պատմական տեղեկութիւններ՝ որ կ'ակնարկեն Յուստինիանոսի (527—565) և Արաբացւոց սկզբան ժամանակներն։ Զորօրինակ յիշելն զՌաւեննա իբրև քաղաք «հոյակապ» յԻտալիա հաւասար Հռոմայ՝ կ'ակնարկէ զփոխարքայութիւնն (exarchat) որ սկսաւ 568-ին Ռաւեննա ի ձեռն Նարսեսի (472—568) առ Յուստինիանոսիւ։ Ե. դարու մէջ ապրող հեղինակ մը չէր կրնար գիտնալ զՓրանկս իբրև «հզօր ազգ» ի Գաղղիա. Փրանկք հազիւ սկսան գտնել մուտ ի Գաղղիա ի վախճանի Ե. դարուն, նա մանաւանդ յետ սկզբան Զ-ին, և չեղան հզօր և անուանի՝ բայց ի սկզբան Է-ին։ Նաև գիտելն զԽերսոն (Ղրիմէ) ընդ ձեռամբ քրիստոնէից՝ կ'ակնարկէ զժամանակն Յուստինիանոսի. քանզի Յուստինիանոս եղաւ առաջին որ նուաճեց զԽերսոն, որ և մնաց այնպէս մինչև 679։ Ե. դարու հեղինակ մը չէր կրնար գիտնալ զՊասրա՝ «ամենալից վաճառօք, և եկք նաւաց (ի նա) ի Հնդկաց և յամենայն կողմանց արևելից»։ Պասրա շինուեցաւ Օմար ամիրապետէն 636-ին, և այնուհետև եղաւ արդարև քաղաք վա-

ճառաշահ։ Արաբացւոց ժամանակի անուններ են Տփղիս, Շամշոզդէ-Պարտաւ, Նփրկերտ, Սասուն, Անարզաբա։ Յետոյ քան զԵ. են նաև Թուրք և Եթիլ անուանք, մին՝ ազգի, և միւսն՝ գետոյ. Կնշրիմ (ըստ Արաբ. Գենեսրին), Կոզա (Քուֆա), և այլք։ Արաբական է նաև՝ զՓառան կոչել տուն Աբրահամու։ Կան օրինակներ, յորս կը գտնուին ուրիշ ակնարկութիւններ նոյնպէս յետոյ քան զԵ. դար, որպիսի են Նարսէս, զօրավար Յուստինիանոսի, «իշխանացեալ երից քաղաքաց յԱփրիկէ», իբրև Ներսեհ Կամսարական պատրիկ Շիրակայ և Արշարունեաց. Բուլղարաց Քուվրաթ իշխանին որդին Ասպարուք, հիմնիչ նոր բուլղար հարստութեան (667) ըստ բուզանդեան պատմագրաց՝ Աշխարհացուցէն, այսինքն օրինակէ մը՝ յիշուած իբրև «Ասպար-Հրուկ, որդի Խաբրաաթայ»։ Թուրքաստան անունն, անծանօթ Ե. դարուն մէջ, ինչպէս նաև «Խադուն», յետին բառ արաբերէն փոխանակ դշխոյի, և մանաւանդ անունն Ռուսաց որ կ'սկսին ծանօթանալ Թ. դարուն մէջ։ Այս ամենայն բաւական է ցուցնել, թէ Աշխարհացոյցն ոչ միայն չէ գործ Ե. դարուն մէջ ապրող մատենագրի, որպիսի պարտի լինել Խորենացին հեղինակ Հայոց Պատմութեան՝ այլև է ժամանակ ժամանակ յաւելեալ և խանգարեալ յետին տգէտ գրիչներէ, ինչպէս արդէն դիտած են եւրոպացի քննիչք, յորս երևելի է Սէն Մարթէն հայերէնագէտ գաղղիացին († 1832)։

**28.** Գանք միւս երկու նշանաւոր պատմագրաց, Եղիշէի և Փարպեցւոյն։ Այս երկու մատենագրաց լեզուն ևս չէ արդարև առաջին կիսոյ Ե. դարուն, բայց չունինք նաև բաւական պատճառ դնելոյ զնոսա յետոյ քան զերկրորդ կէս այն դարուն։ Որովհետև այս պատմութեանց նիւթը կը վերաբերի երկրորդ կիսոյ Ե. դարուն՝ կը հետևի, թէ այս երկու պատմիչք եթէ չեն ականատեսք՝ են գէթ ժամանակակիցք ականատեսներու. այս պարագան ապաքէն կու տայ մեծ հաւանականութիւն ստուգութեան պատմութեան նոցա։ Փարպեցւոյն համար կայ յիշուելու արժանի ուրիշ կէտ։ Առանց երկբայութեան է, թէ Պատմութիւն Փարպեցւոյն գրուեցաւ ի խնդրոյ Վահանայ Մամիկոնենի, որ էր ժամանակակից և պաշտօնակից Սահակայ Բագրատունւոյ. առանց երկբայութեան է նաև, թէ Փարպեցին առաւ բազում ինչ ականատեսներէ, զորօրինակ Վարդանանց պատմութեան համար ի Վահանայ Ամատունւոյ, որ էր մին ի նախարարաց Վարդանեանց դարձելոց ի Հայս առ Պերոզիւ, և Վահանեանց պատմութեան համար՝ ի նմին իսկ Վահանայ և յայլոց՝ որ էին գործակից և միջամուխ Վահանայ գործերուն։ Արդարև զայս գիտենք միայն ի վկայութենէ նորին իսկ Փարպեցւոյն. սակայն չէ

բանաւոր խորհել, թէ Փարպեցին կը ստէ ասելով, թէ գրեց ի խնդրոյ Վահանայ, և առաւ այս կամ այն ականատեսէ։ Ահա բանք Փարպեցւոյն. «Մտաւոր և քաջ այրն Վահան, տէրն Մամիկոնէից, զօրավարն Հայոց և մարզպանն, որ բազում և անհամար ուղղութեանց աշխարհիս Հայոց ի ժամանակս իշխանութեան իւրոյ եղև արարող անձամբ և զայլս յորդորելով զբազումս. որպէս այլ ամենայն բարւոյ հոգացեալ զՀայաստան աշխարհի իւրս՝ առաւել ես զայս ի դէպ և պատշաճ համարեցաւ, ի մնացեալ տեղւոյ պատմութեան երկրորդ գրոցն (այն է Բուզանդայ) աճեցուցանել յառաջ և գրել յայնմհետէ զեղեալս յաշխարհիս Հայոց։ Բազում զգուշութեամբ գրել և կարգել մի ըստ միոջէ զամենայն զհոգևորացն զառաքինութիւնս և զարանց քաջաց զլաւութիւնն»։ Եւ ի ստորև աւելի յայտնի. «Ըստ այսմ օրինակի զգուշացուցեալ ստիպեցուցանէ զմեզ տէրն Մամիկոնէից Վահան, զօրավարն Հայոց և մարզպան, որոյ հասեալ հրաման առ իս Ղազար Փարպեցի, որ և սնեալ և ուսեալ առ ոտս առաքինակրօն երանելւոյն Աղանայ Արծրունւոյ.... Եւ արդ այսպէս հարկաւորեալ բռնադատեաց զտկարութիւնս մեր տէրն Մամիկոնէից Վահան, սպարապետն Հայոց և մարզպան, ձեռնարկել ի գործ որ ի վեր քան զկար գիտութեան մերոյ էր։ Զի ոչ փոքր ինչ կասկած է աներկիւղ այսպէս ումեք տալ զանձն յայսպիսի վաստակս, ուր պիտոյ են յարմարութիւնք բանից, որոշեալ կարգադրութիւնք ըստ հրամանի կանոնեալ գիտութեանն, բերել պատկառելով ստուգագրութիւն անպարսաւ. յականջս իմաստասէր լսողաց, չյաւելուլ զանեղեալսն յընդունացն աճմունս բանից, չնուազեցուցանել զեղեալսն և կարճակտուր պատմել բանիւք անփութութեամբ. այլ զբնաւն ողջախոհ զգուշութեամբ բերել ի յայտնութիւն։ Եւ վասն զի են աստ պէտք բազում երկիւղագիր պատրաստութեան՝ արդ նպաստեալ իմում տկար խորհրդոյս աղաչեմ սատարեցէք առ Աստուած խնդրուածովք, որովք արդարապատումն ճշմարտաբանեալ զեղեալ վեր քան զիս գործոյս հարկաւորութիւն, ընդ յորձանս մեծապատում ծաւալացս նաւեալ մտաւոր ստուգաբանութեամբ հասից յանալէկոծ և յապահով նաւահանգիստն» (Փարպ. Գ. Ե.). Չէ բանաւոր մանաւանդ խորհել, թէ այս բանք չեն Փարպեցւոյն, այլ այլոյ ուրուք եկամուտ։ Համառօտիւ՝ պատմութիւն Փարպեցւոյն ունի՝ ինչ որ կը պահանջուի ընդունելու համար պատմութիւն մը հարազատ և ժամանակակից։ Փարպեցին կը թուի մեռած առ կենդանութեամբ Վահանայ, քանզի չգիտեր նորա մահը. այս յայտնի է նաև ի թղթոյն, որ ուղղեալ է առ Վահան և է ստուգիւ Փարպեցւոյն։

Եղիշէի համար չունինք նոյն ստուգութիւնը։ Դաւիթ երէց Մամիկոնեան, յորոյ խնդրոյ գրեց Եղիշէ զպատմութիւն իւր ըստ վերնագրի մատենին—«Եղիշէի վարդապետի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Դաւթի երիցու Մամիկոնի հայցեալ»—չէ ծանօթ ոք, ուստի և չկրնար պատմագրութեան ժամանակին վրայ տալ մեզ լոյս։ Եղիշէ իւր յառաջաբանին մէջ, որ է ինկած հայերէն, և ոչ ինչպէս կը պահանջուէր թարգմանչաց աշակերտէ՝ չտար զանուն անձին, որ որպէս թէ հրամայեց նմա գրել զայն պատմութիւն. կը կոչէ զնա միայն «քաջ» - «Բանն վասն որոյ պատուիրեցեր՝ արարի, ո՛վ քաջ»։ Սակաւ մի յետոյ կը գովէ զնա իբրև մեծ ի գիտութեանն Աստուծոյ - «Այլ դու, ո՛վ մեծ ի գիտութեանն Աստուծոյ»։ Այս տիտղոսներուն նայելով՝ հարկ է դնել, թէ այս անծանօթ Մեկենասն, թէպէտ լոկ երէց ըստ վերնագրին՝ էր նշանաւոր ոք։ Այսչափ ըստ ճակատուն և յառաջաբանին. բայց կայ ուրիշ կէտ որ բաւական ապացոյց է, թէ պատմութիւնն Եղիշէի գրուեցաւ ոչ շատ յետոյ քան զպատերազմն Վարդանանց, այսինքն սակաւ ամօք յետոյ քան զմահն Յազկերտի Բ. (458 կամ 460) առ որով եղաւ այն պատերազմն, երբ տէրութիւնը կործանման մօտ էր յերեսաց թագաւորին Քուշանաց, որմէ չարաչար յաղթուեցաւ Յազկերտ։ Ասելն Եղիշէի - «Քանզի և արջք օրհասականք ի վախճանել շնչոյն հզօրագոյնս կռուին»՝ ըստ ոմանց կ'ակնարկէ զայս։ Եւ արդարև Պատմութիւն Եղիշէի կը հասնի մինչև հինգերորդ տարին Պերոզի (466)։ Եղիշէ չգիտեր Նախարարաց դարձը։ Պատմութիւնն Եղիշէի թէպէտ ժամանակակից՝ ունի պատմական հիման վրայ վիպասանական ձև, որ սպատմութիւնը գէթ ըստ պարագայից կը փոխէ ի վէպ։ Եղիշէի անձին վրայ չէ մարթ ասել ստոյգ ինչ. ինչ որ կը պատմեն զնմանէ յետին պատմիչք, մերթ դնելով զնա ատենադպիր Վարդանայ և ի բանակի նորա, մերթ եպիսկոպոս, և մերթ առանձնացեալ յանապատս՝ չէ արժանի հաւատարմութեան։ Ստոյգ է սակայն, թէ պատմութիւնն յանուն Եղիշէի է գործ ոչ դոյզն մատենագրի երկրորդ կիսուն Ե. դարուն։ Լեզուն, ազատ հելլենաբանութենէ՝ չունի թարգմանչաց լեզուին նկարագիրը, ուրեք ուրեք ձանձրալի միակերպութեամբ հակառակ ընտիր ճաշակի, իսկ ըստ պատմութեանն՝ ոչ առանց ընտրութեան ընդունելի։ Պատմութիւն Եղիշէի, հանդերձ հմտութեամբն դենին Պարսից, որոց բառերն իսկ շատ անգամ կը գործածէ՝ է պատմական վէպ, որոյ նպատակն է բարձրացունել յաչս ժողովրդեան, ժամանակին բառով ուխտապահութիւնը, և աղարտել ուխտազանցութիւնը, զմին՝ յանձին Վարդանայ, և զմիւսն՝ յանձին Վասակայ, որ են երկու անձինք այն վի-

պատմութեան։ Ուստի և զգուշաւոր պատմիչ մը չկրնար առանց անաչառ դատաստանի առնուլ բան առ բան ինչ որ կը պատմէ Եղիշէ։ Փարպեցին, ըստ լեզուին այնպէս ինկած ինչպէս Եղիշէ՝ չունի արդարև Եղիշէի պատմագրական արուեստը, բայց և ոչ այն բանի միակերպութիւնը և վիպասանական ձևն, որ պատմութիւնը կը փոխէ ի վէպ (ռոման), այլ է ըստ ոճոյն բնական և զանազան, և հանդերձ անպաճոյճ և անողորկ պարզութեամբն ունի ժամանակին ժողովրդեան լեզուին զուարթութիւնը։ Որպէս Եղիշէ՝ նոյնպէս Փարպեցին ըստ ոգւոյն է կղերական, ուստի և կը ջանայ միշտ դիպաց այն կողմերն երևցունել, որ կը նպաստեն Վարդանեան դատին, սակայն ըստ պարագայից չէ ստեղծող, այլ միշտ այնպէս բնական՝ որ կրնանք թեթև դատաստանաւ հետևել պատմութեան նորա իբրև աղբեր։ Մեծ տարբերութեան, որ կայ ի մէջ պատմութեան Եղիշէի և պատմութեան Փարպեցւոյն՝ իբրև օրինակ բերենք յերկոցունց ևս Վասակայ մահուան կամ վախճանին նկարագիրը, ցուցնելու համար թէ որչափ բնական, և եթէ ոչ բոլորովին ճըշմարիտ՝ գէթ հաւանական է մին, և անբնական և սեթևեթեալ միւսն։ «Եւ նենգաւորն Վասակ կացեալ ի դրանն ամս ինչ կարի վշտագին և նեղութեամբ բազմաւ՝ մաշէր զաւուրս իւր հառաչելով և յոգւոց հանելով զամենայն օր և զժամ, մինչև թշնամակերպ ձաղանօք սփռեալ զթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին զիւրոյին ծեծէր զդէմսն ասելով. Ահա ընկալ զայս ձաղսս, անէր, զոր ետ բերել քեզ ուխտանենգութիւն սրբոյ Աւետարանին և արիւն նահատակութեան սրբոյն Վարդանայ Մամիկոնէի և այլոցն ցանկալի հաղորդելոցն ընդ նմա, որոց ժառանգեալ զկաւիտենից կեանսն՝ ընկալան զանուն բարի յերկրի և անանց յազգաց յազգս իւրեանց։ Իսկ դու, անէ, մեղաւոր անձն իմ, կեաս խղճիւ և ցաւօք մտաց զսակաւաթիւ զաւուրս կենցաղոյս, և պատրաստեալ պահիս մշտնջենաւոր և անանց գեհեննին։ Եւ զայսպիսի բանս հառաչանաց նորա և լալոյ մինչև յօր մահուան իւրոյ՝ խօսէին ընդ մեզ զայս արդարապատումն սպասաւորք նորին իշխանին Վասակայ։ Որոյ և վախճանն իւր անդէն յերկրին Պարսից վճարէր, ըստ բանի առն Աստուծոյ սրբոյն Ղևոնդի» (Փարպ. ԽԶ.)։ Այսպէս Փարպեցին։ Լսենք և Եղիշէի. «Իսկ ուրացեալն Վասակ հայէր ի միաբանութիւն սուրբ կապելոցն, որք մեծաւ խնդութեամբ ընդունէին զչարչարանսն, և զուարթագոյն և պայծառք երևէին, որպէս յառաջագոյն յարքունիսն. հայէր և կարօտէր, և ոչ ոք խառնեաց զնա ի նոսա, այլ ուրոյն նովին կապանօք պահէին։ Եւ օր ըստ օրէ բերէին իբրև զգէշ ընկենուին ի մեծ հրապարակին, ձաղէին և այպանէին, և

տեսիլ զնա ամենայն կարաւանին առնէին։ Կողոպտեցին հանին և ոչ ինչ թողին զոր ընդ իւրն ունէր. այնպէս ձաղեցին աղքատութեամբ՝ մինչ հաց մուրանային և բերէին նմա իւր ծառայքն։ Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա՝ որ մինչև զհարց և զհաւուց և զիւր արարս և զզարդս կանանց ևս եդ ի վերայ և ետ և տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի։ Եւ յայն տեղի հասուցին՝ մինչև հարցանել նմա, եթէ կայցէ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն մերոց։ Եւ եթէ գտեալ էր նորա՝ հանէր և տայր ընդ իւր և ընդ ընտանեացն տուգանս, որպէս զի բազում մարդիկ իսկ չոգան ի տուժի։ Եւ իբրև այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարացաւ՝ անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն։ Զեռաւ փոր նորա, և հարան և որորեցան գոգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն նորա. խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա. լուծան ջիղք բազկաց նորա, և յետ կոյս կորացան կրկունք ոտից նորա։ Բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։ Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա, և ոչ գտաւ խոստովանութիւն ի շրթունս նորա։ Ճաշակեաց զմահ հեղձամղձուկ, և էջ ի դժոխս անհնարին դառնութեամբ։ Ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան սաստիկ հարուածովք ամենայն թշնամիք նորա։ Եւ այն որ կամէրն թագաւոր լինել մեզօք Հայոց աշխարհին՝ ոչ երևեցաւ տեղի գերեզմանի նորա. քանզի իբրև զշուն մեռաւ, և իբրև զգէշ քարշեցաւ։ Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց, և ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն։ Ոչինչ եթող չարիս զոր ոչ գործեաց ի կեանս իւր, և ոչինչ մնաց ի մեծամեծ չարեաց՝ որ ոչ անցին ընդ նա ի մահուան նորա։ Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա, առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա, զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ՝ նզովս ի հետ արկցէ, և մի լիցի ցանկացող գործոց նորա» (Եղիշ. էջ 248)։ Ո՛րչափ ինչ հարկ է թողուլ Եղիշէի նկարագրէն, և որչափ ի նկարագրէն Փարպեցւոյն՝ որպէս զի հասնինք բուն պատմութեան. ի վերջնոյն՝ սակաւ ինչ, յառաջնոյն՝ գրեթէ ամէնը։

**29.** Մեծագոյն տարակոյսն է Մամբրէի և Դաւթի Անյաղթի վրայ։ ԶՄամբրէ յիշող հնագոյն հեղինակն է Ասողիկ, որ իբրև երրորդ ի հայ փիլիսոփայս գիտէ զՄամբրէ, և այս տեղեկութիւնը կը թուի առած այն անանուն գրուածէն, որմէ առինք Դաւթի և Մովսիսի վրայ պատմուած պանծալի գործերն յԱթէնս և ի Կոստանդնուպոլիս Թէոդոսի և Մարկիանոսի ժամանակ։ Գրուածն է, ինչպէս

տեսանք՝ առասպելական։ Այս գրուածին մէջ կը յիշուի Դաւթի հետ վիճող Մամբրէ ոմն յոյն եպիսկոպոս Կորնթոսի, որ էր մին ի փիլիսոփայից Մարկիանոս կայսեր։ Մի գուցէ այս Մամբրէ տուած է առիթ ստեղծել Հայ փիլիսոփայ մը նոյն անուամբ։ Զարմանալի է, որ Մամբրէ կը նշանակէ թուղթ կամ մագաղաթ, և ինքն կը կոչուի Վերծանող, այսինքն ընթերցող։ Չէ սակայն անհաւանական, թէ յառաջ քան զԺ. դար եղած է վարդապետ ոմն Հայ Մամբրէ անուն, զոր կը յիշէ վերոյիշեալ գրուածն իբրև ընկեր՝ պանծալի, թէև առասպելական վէճերուն Դաւթի և Մովսիսի առաջի Մարկիանու։ Յանուն Մամբրէի կան ճառք չորք, զորս ի լոյս ընծայեցին Մխիթարեանք ընդ Պատմութեան Կորեան և գործոց Դաւթի Անյաղթի։ Այս ճառերէն երկուքն են ի յարութիւնն Ղազարու, և երկուք՝ ի գալուստն Տեառն յԵրուսաղէմ։ Մամբրէ ոմն յետին դարու վարդապետ, և կամ թերևս այլևայլք, կը թուին քաղած Ղազարու յարութեան ճառերն յոյն Հարց ոմանց Յովհաննու Աւետարանին մեկնութեան հին Հայ թարգմանութենէն, փոխելով լեզուն ըստ ոճոյ իւրեանց ժամանակին, քանզի թարգմանչաց լեզուին նըշմարանք կ'երևին ի սոսա ուրեք ուրեք։ Եւ արդարև ձեռագիր օրինակներէն ոմանք, ըստ վկայութեան Հրատարակչին, ունին զանուն Յովհաննու Ոսկեբերանի։ Նոյնպէս իմա միւս երկուց համար, որ առնուած կ'երևին հին Հարց ոմանց Աւետարանի մեկնութեան թերևս աւելի յետին Հայ թարգմանութենէ մը, քանզի ոճ սոցա է աւելի ստորին։ Զիարդ և իցէ՝ այս ճառք, ոյր ուրուք և իցեն՝ ըստ այժմու կերպարանացն չեն գործ աշակերտի թարգմանչաց, այլ հայերէն դպրութեան միջին դարուց խանգարեալ ճաշակի արդիւնք։

**30.** Թողլով Դաւթի Անյաղթի վրայ յօդուած առասպելներն, և դատելով ըստ կանոնաց անաչառ քննութեան՝ չենք կարող ասել հաւաստեաւ, թէ Դաւիթ էր ազգաւ յո՞յն թէ Հայ, ուստի և գործն է բնագի՞ր թէ թարգմանութիւն Ը. դարու բիրտ հելլենաբանութեամբ, մանաւանդ որ Դաւթի գործին յունարէնն ևս կայ (Պատմ. Հայ դպր. Ա, էջ 213)։ Գործին այլևայլ մասերուն ճակատը կը գտնենք գրուած. «Դաւթի եռամեծի և անյաղթ փիլիսոփայի», «Նորին Դաւթի փիլիսոփայի», «Դաւթի անյաղթ փիլիսոփայի»։ Բուն հեղինակը չէր կրնար տալ ինքեան այս տիտղոսներն—«եռամեծ», «փիլիսոփայ», «անյաղթ». յայտնի է թէ այս տիտղոսք են թարգմանչէ կամ օրինակողէ. հաւանականագոյն է սակայն, թէ են թարգմանչէ, քանզի գործն է թարգմանութիւն։ Հաւանականագոյն է ուրեմն, թէ յոյն ոմն Դաւիթ անուն գրած է զայս մատեան, զոր

այլ ոք Հայ թարգմանած է հայերէն։ Ցետին մատենագիրք համարելով գործը բնագիր և ոչ թարգմանութիւն՝ զԴաւիթ կարծած են Հայ, որոյ վրայ հնարուած են այն առասպելներն՝ զորս վերագոյնն յիշեցաք։ Թէ այլք ևս ունեցած են յառաջ քան զմեզ զայս կարծիս՝ կը վկայէ հեղինակն Պատմութեան հայ դպրութեանց (Ա, էջ 214)։ Գործք Դաւթի Անյաղթի կը բովանդակեն ութ գլխաւոր մասն. եօթն առաջինք են համառօտ քաղուածք և մեկնութիւնք փիլիսոփայական գործոց Պիւռոնի, որ էր գլուխ Սկեպտիկեանց, Պորփիւրի, որ էր Նոր-պղատոնեան փիլիսոփայ Գ. դարու, և մանաւանդ դպրոցական գործոց Արիստոտելի. ութերորդն է թուղթ առ Աղեքսանդրոս յաղագս աշխարհի և առաքինութեան։ Գործն է բաւական ընդարձակ, և կը մատուցանէր ամբաւ օգուտ ազգին. և լինէր Հայ լեզուին մեծութիւններէն մին՝ եթէ էր հարազատ հայերէն ըստ լեզուի Ե. դարու։ Ի զուր է կարծել, թէ թարգմանչաց լեզուն չէր կարող տալ այնպիսի փիլիսոփայական գործ։ Չենք կըրնար հաւատալ, թէ Եզնկայ գրիչն, համակ փիլիսոփայական, չէր կարող տալ մեզ Արիստոտէլ մը, Պորփիւր մը, ինչպէս Ագաթանգեղեայն, որ այնպէս բանաստեղծական է՝ Հոմերոս մը կամ Պինդարոս մը։

Խաչի ճառին վրայ, որ կ'ընծայուի Դաւթի Անյաղթի՝ արդէն խօսուեցաւ։



## ԳԼՈՒԽ Բ.

### ԱՌԱՋԻՆ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ. ԳՈՐԾՔ ՎԱՐԴԱՆԱՅ:

*1. Սասանեանք հալածիչ քրիստոնէութեան: 2. Կասկած Պարսից զՀայոց: 3. Պատճառք կասկածանաց. Հաւատակցութիւն ընդ Յոյնս: Կէս անկախութիւն երկրին: 4. Սկիզբն հալածանաց ընդդէմ Հայոց: 5. Կը ղրկուի զունդ ի Հայս. կը կոչուի այրուձին: 6. Նոր կարգք. Երկպառակութիւն ազգին: 7. Պատմութիւն պատերազմին Վարդանանց: 8. Խտիր ի մէջ Փարպեցւոյն եւ Եղիշէի: 9. Խորագէտ քաղաքականութիւն Յազկերտի: 10. Երթեւեկ նամակաց երկուստեք ըստ Եղիշէի: 11. Փարպեցին չէ միաբան յայսմ ընդ Եղիշէի: 12. Յասումն Յազկերտի. Նախարարք կը կոչուին եւ կ'արձակուին: 13. Ուխտաբանութիւնք Եղիշէի: 14. Բուն նպատակ Յազկերտի: 15. Ողորմ տեսարան ի դարձին Նախարարաց մոգերով. Ուխտաբանութիւնք Եղիշէի: 16. Վարդան մեկնի տունքն եւ կոչի յետս: 17. Պատրաստութիւն ի պատերազմ: 18. Հակառակութիւն Վահանայ Ամատունւոյ ընդ Վասակայ մարզպանի: 19. Անիրաւ կասկած զՎասակայ: 20. Վարդան կ'երթայ զօրօք յԱղուանս: 21. Թուղթք առ այլեւայլս վասն օգնութեան: 22. Յոյնք կը հրաժարին օգնել: 23. Պատերազմ եւ յաղթութիւն Վարդանանց յԱղուանս: 24. Վասակ կը բաժնուի: 25. Ջանք Վասակայ արգելուլ զապստամբութիւնն: 26. Պատերազմը կ'սկսի. Պարտութիւն Հայոց: 27. Պատճառք պարտութեան Հայոց: 28. Պատճառ բաժնուելուն Վասակայ: 29. Թէ յորո՛ւմ կը տարբերի պատմութիւն Եղիշէի ի պատմութենէ Փարպեցւոյն: 30. Աւերմունք եւ կոտորած ի ձեռն Վարդանանց. Վասակ կը բռնուի եւ կ'ապաշխարէ ըստ Եղիշէի: 31. Սքանչելիք ի նպաստ Վարդանանց ըստ Եղիշէի: 32. Այլ տարբերութիւն Եղիշէի ի Փարպեցւոյն: 33. Նամակն Հայոց առ Թէոդոս ըստ Եղիշէի: 34. Հայոց խնդիրը կը մերժուի: 35. Թէ ե՛րբ բաժնուեցաւ Վասակ. Վկայութիւն զնմանէ: 36. Վասակ կ'աւերէ զերկիրն ըստ Եղիշէի: 37. Վարդան ասպատակ կը հանէ ի Սիւնիս ըստ Եղիշէի: 38. Այս աւերմանց համար երկուստեք զուժկան առ Թագաւորն, որ կ'ապաշաւէ, ըստ*

*Եղիշէի: 39. Վասակ ղրացի ժողովուրդներ կը զրգռէ ընդդէմ Վարդանանց, ըստ Եղիշէի: 40. Թէ հրովարտակք ներման էի՞ն ստուգիւ Յազկերտէ: 41. Միաբանութիւն Փարպեցւոյն եւ Եղիշէի զհանգամանաց պատերազմին: 42. Առեղջաբանութիւնք առ զօրականն. Նկարագիր ճակատուն: 43. Թիւ Վարդանանց:*

**1.** Քրիստոնէութիւնն, որ, թո՛ղ մանր մանր ազգերն յայսկոյս Տիգրիսի (Հայաստան, Ուռհայաստան, Միջագետք, որ էին ընդ իշխանութեամբ կամ գէթ ընդ ազդեցութեամբ Պարսից), չկարաց գտնել մուտ ի բուն յարեւելս անդր քան զՏիգրիս՝ էր գոնէ թոյլ տուեալ երկրիս այն մասին մէջ, ոչ առ Պարթեւօք միայն, այլ և առ Սասանեամբք, որ էին աւելի ջերմ մոգակրօն։ Յետ որոյ քրիստոնէութիւնն ընդհանրացաւ ի հռոմէական պետութեան, և Հայաստան և Միջագետք քրիստոնէացան՝ հալածմունք սկսան ի Պարսս քրիստոնէութեան դէմ, առ երկիւղի՝ թէ գուցէ ազդեցութիւնն քրիստոնէութեան միտեցուցանէր արևելեան ժողովուրդներ ի Հռոմայեցիս։ Արդէն 228-էն հետէ փոխանակ ազատամիտ հարըստութեանն Պարթևաց եկած էր Սասանեանն, խիստ և մոլեռանդ։ Լինելն քրիստոնեայ՝ սկսաւ առ սակաւ սակաւ համարուիլ այս վերջիններէն քաղաքական յանցանք, իբրև ապստամբութիւն ընդդէմ մոգակրօն տէրութեանն Սասանեանց։ Շապուհ Բ. (309—381) իւր տէրութեան քսաներորդ տարիէն, այն է Կոստանդիանոսի դարձէն սկսեալ գրեթէ մինչև ի վախճան իւր երկար իշխանութեանն՝ էր ի հալածել զքրիստոնեայս իւր երկրին մէջ։ Առ յաջորդօք նորա մեղմացաւ արդարև հալածումն, մանաւանդ առ Յազկերտիւ Ա. (400—421), որ ներողագոյնն էր քան զամենայն թագաւորս Սասանեանց, բայց ի վերջ կոյս թագաւորութեան նորա (418) բորբոքեցաւ միւսանգամ հալածումն սաստկութեամբ, ի պատճառս յանդգնութեան ոմանց ի քրիստոնէից, մանաւանդ Աբդա անուն եպիսկոպոսի, որ համարձակեցաւ այրել ատրուշան, գործ՝ որ քրէական յանցանք էր առ Սասանեանս։ Ուստի գլխաւոր ջանք Պարսից եղաւ այնուհետև ածել հպատակ ազգեր, մանաւանդ զՀայս, ի մոգակրօնութիւն։ Այսպէս խրատ կու տար Միհրներսեհ Յազկերտի ըստ Փարպեցւոյն. «Եթէ մերոց օրինաց ընտանեցուցանէք զնոսա (զՀայս) և ընդելնուն՝... այնուհետև զձեզ սիրեն և զԱրեաց աշխարհս, և ի կայսերէ և յօրինաց նորա և յաշխարհէն մերժին և հեռանան ի բաց. և լինի այնուհետև աշխարհն ընդ մեզ սերտ սիրով և միաբանութեամբ։ Եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին՝ Վիրք և Աղուանք այնուհետև մեր իսկ են» (Փարպ. ԻԱ.)։ Ոչինչ այնպէս կա-

կածելի էր Սասանեանց ի բնէ՝ ինչպէս հաւատակցութիւնն ընդ Յոյնս։ Վռամ Ե. (421—442), յաջորդն Յազկերտի Ա, այս պատճառաւ կոչեց յարքունիս զԱրտաշիր և զՍահակ, այսինքն իբրև հաւատակից—«զՅունովք գլեալ խորհրդով», և հակառակ բողոքոյն Սահակայ, թէ «Ես զնորա ապստամբութեան ինչ խորհուրդ ոչ գիտեմ»՝ ընկէց զԱրտաշիր թագաւորութենէն, և զՍահակ կաթողիկոսութենէն.—«Հրամայեաց Վռամ առնուլ զթագաւորութիւնն յԱրտաշրէ, և անդէն արգելուլ զնա, և զամենայն ինչս ազգի նորա ունել յարքունիս. Նոյնպէս և զմեծն Սահակ, և զտունն կաթողիկոսական ունել յարքունիս, և տալ փոխանակ նորա զաթոռ եպիսկոպոսութեանն Հայոց զՍուրմակն» (Խոր. Գ. ԿԳ.)։ Եւ յետոյ երբ խնդրուեցաւ Սահակ Նախարարաց միոյ մասնէն՝ հաստատեց զնա, տալով նմա հակառակաթոռ զՇմուէլ, ոչ այնչափ իբրև գործակից՝ որչափ քաղաքական լրտես.—«Հաւանեալ Վռամայ՝ զերկաքանչիւրոցն կատարեաց զխնդիր (Նախարարացն), տուեալ յաթոռ եպիսկոպոսապետութեանն զայլ ոմն ասորի Շմուէլ անուն, զի լեցի ընդդիմափառ (հակառակակարծիք) մեծին Սահակայ և հակառակաթոռ, և գործ նմա զատուցեալ՝ զընկերել մարզպանին, կալ ի վերայ բաշխից հարկաց խնդրեցելոց և դատաստանաց և աշխարհական կարգաց» (Խոր. Գ. ԿԵ.)։ Դիտելու արժանի է սպառնալիքն Վռամայ յարձակելն զՍահակ յատենէն. «Բայց յարձակելն (զՍահակ) յանդիման իւր արարեալ ի բազմակոյտ ատենին՝ ասէ. Երդմնեցուցանեմ զքեզ ի քոյին հաւատ՝ միամիտ կալ ի ծառայութեան մերում, և ոչ խորհել իրս ապստամբութեան, պատրեալ ի մոլար հաւատակցութիւնն Յունաց, և լինել կորստեան պատճառ Հայոց աշխարհին ի մէնջ, փոխել զքաղցրարար անուն մեր ի չարարար» (Խոր. Գ. ԿԵ.)։ Այսպէս երկիւղ մեծ էր Սասանեանց՝ Յունաց հաւատակցութենէն, իբրև առաջին և գլխաւոր առթէ միտելոյ Հայոց ի Յոյնս։

2. Չէր սակայն բոլորովին անհիմն Պարսից կասկածն զՀայոց։ Նշանաւոր է Սահակայ պատասխանն առ Նախարարս, որ կ'ամբաստանէին զԱրտաշիր. «Պարտ է, ասէ, փոքր մի տանել թերութեան առնն, մինչև զեւս իրացն խորհել մարթասցուք կայսերբն Յունաց Թէոդոսիւ» (Խոր. Գ. ԿԳ.)։ Ի՞նչ կրնար խորհել Սահակ Թէոդոսի հետ, որ չունէր ամենևին ազդեցութիւն Պարսից բաժնին մէջ և Պարսից կողմանէ նստող թագաւորի մը վրայ՝ եթէ չունէր Սահակ ակնկալութիւն ի մօտոյ մտնելուն Հայոց միւսանգամ ընդ իշխանութեամբ կայսեր։ Սահակ ունէր այս յոյսը՝ երբ ըստ Սոկրատայ, Սոզոմենայ և Թէոդորետայ, մատենագրաց Ե. դարու՝ Թէոդոս էր

ի պատերազմի ընդ Վռամայ անդստին յամէն 421, և Յոյնք յաղթելով զօրավարին Վռամայ Ներսեհի, Պարսից Արզազենէ նահանգին մէջ՝ անցան ի Միջագետս պաշարել զՄծբին, բայց չյաջողեցան, և կնքուեցաւ հարիւրամեայ խաղաղութիւն սա պայմանաւ, որ Վռամ դադրեցունէր հալածումը։ Ոչինչ ընդհատ նշանաւոր է միւս երկդիմի պատասխանն Սահակայ յատենի Վռամայ (431)։ Երբ Վռամ, ինչպէս պատմեցինք ի վերոյ, կ'զգուշացունէր զՍահակ միամիտ կալ ի ծառայութեան և ոչ խորհել իրս ապստամբութեան Սահակ առանց յիշելու ապստամբութեան կէտը՝ «սկսաւ, ասէ Խորենացին, ճառել զերախտիս ծառայութեանն, և զապերախտն ի նոցանէ լինելը». որպէս թէ ասէր. Միթէ զարմանալի է խորհել մեզ ապստամբել, մեզ՝ որ փոխանակ այնչափ ծառայութեան ոչ այլ ինչ տեսած ենք՝ եթէ ոչ ապերախտութիւն։

**3.** Հաւատակցութեան վրայ, իբրև պատճառ կռօկածանաց՝ հարկ է յաւելուլ նաև երկրին կէս անկախութիւնն, որ կու տար դիւրութիւն մեծ ապստամբութեան գործին։ Յետ անկման Արտաշրի, վերջին թագաւորին Հայոց, աթոռէն, թելադրութեամբ միոյ մասին նախարարաց, Հայք թէպէտև կորուսին թագաւորութիւնը՝ կը պահէին տակաւին ինքնօրէնութեան գլխաւոր տարրներն։ Հազարապետութիւնն, որ էր ներքին գործոց պաշտօնէութիւն, և սպարապետութիւնն էին ի ձեռս հայ նախարարաց։ Հազարապետ էր, հաւանականապէս թագաւորութեան ժամանակէն, Վահան Ամատունի, այր «զօրաւոր հաւատով և ճոխութեամբ (ազդեցութեամբ) մարմնաւորաւ» (Խոր. Գ. ԿԷ.), «իբրև զհայր վերակացու համաբեալ» (Եղիշ. էջ 39). և զսպարապետութիւնն ունէր Մամիկոնեան ցեղէն Վարդան մեծ, թոռն Սահակայ, ի վաղուց (յառաջ քան զբարձումն թագաւորութեանն) կարգեալ ստրատելատ ի Թէոդոսէ (ի սկզբան Յունաց բաժնին հայ զօրաց համար միայն հաւանականապէս.—Խոր. Գ. ԾԷ.), և ապա տանուտէր Մամիկոնեան տոհմին, միանգամայն սպարապետ՝ ի Վռամայ (Խոր. Գ. ԿԵ.)։ Յետոյ ապա, երբ հաստատուեցաւ մարզպանութիւնն յետ բարձման թագաւորութեանն (Խոր. Գ. ԿԴ.)՝ այս պաշտօն ևս յանձնուեցաւ Հայոց, այնպէս որ իբր 10 ամօք յառաջ քան զմահն Սահակայ (430) կը գտնենք զՎասակ մարզպան զկնի Վեհմիհրշապհոյ (Խոր. Գ. ԿԴ.), «ամենայն նախարարացն Հայոց աւագ» (Եղիշ. էջ 105)։ Թող նախարարեանն, որոց իւրաքանչիւրն ունէր զիւր գունդ՝ ազգն ևս ունէր զիւր առանձին զօրս, արքունի անուամբ, որպէս կ'երևի՝ համակ այրուձի, ընդ ձեռամբ սպարապետին։ Հարկերն՝ Հայոց ձեռօք կը հաւաքուէին և կը տրուէին յարքունիս. կրակապաշտութիւնն

չունէր կռուան ի Հայս, և օրէնքն էր համակ եկեղեցական։ Ուներնալով անկախութեան այս ամէն տարրներն՝ շատ դիւրին էր ազգին ձեռս տալ ի Յոյնս, եթէ տեսնէր փոքր ինչ յոյս ձեռնտուութեան այն կողմէն։

4. Զիարդ և իցէ՝ մինչև Վռամայ մահը (442), որ դիպեցաւ յետ երկուց ամաց մահուն Սահակայ՝ չեղաւ Պարսից կողմանէ հալածման փորձ Հայոց դէմ, ոչ իբրև ստիպումն, և ոչ իբրև հրաւէր։ Այս փորձ կ'սկսի առ Յազկերտիւ Բ. (442—460), յաջորդաւ Վռամայ։ Ամբարտաւան թագաւորն, հակառակ դաշանց նախորդին իւրոյ, յարձակեցաւ ի Միջագետս. Հռոմայեցիք պարտեցան. եղան աւերմունք, մինչև փախստական քրիստոնեայք յանձնուեցան, և խաղաղութիւնն հաստատուեցաւ միւսանգամ, ըստ պատմութեան Թէոդորետայ ժամանակակցի, և Պրոկոպիոսի որ չէ հեռի ժամանակաւ, ընդ որս միաբան է և Եղիշէ.—(«Իբրև զգազան մի կատաղի յարձակեցաւ ի վերայ աշխարհին Յունաց. եհար մինչ ի քաղաքն Մծբին, և զբազում գաւառս Հոռոմոց աւերեաց տապատակաւ, և զամենայն եկեղեցիս հրձիգ արար. կուտեաց զաւար և զգերի, և ահաբեկ արար զամենայն զօրս աշխարհին։ Իսկ երանելին Թէոդոս կայսր (Թէոդոս փոքր), քանզի խաղաղասէր էր ի Քրիստոս՝ ոչ կամեցաւ ելանել ընդ առաջ պատերազմաւ. այլ այր մի Անատոլ անուն, որ էր նորա սպարապետ արևելից՝ առաքեաց առ նա բազում գանձիւք. և արք պարսիկք որ փախուցեալ էին վասն քրիստոնէութեան և էին ի քաղաքին կայսեր՝ կալաւ և ետ ի ձեռս նորա, և զամենայն զոր ինչ ասաց ի ժամանակին՝ կատարեաց ըստ կամաց նորա և արգել զնա ի բազում բարկութենէն».—Եղիշ. էջ 13, 14)։ Պարտութեամբ Թէոդոսի հատաւ Հայոց յոյսը. զայս կը թուի ակնարկել Եղիշէ յասելն. «Իբրև բեկեալ տեսին (Հայք) զզօրութիւնն Յունաց առաջի նորա՝ յոյժ հարան խոցեցան ի խորհուրդս իւրեանց» (Եղիշ. էջ 20)։ Յետ երկեցուցանելոյ զերկչոտն Թէոդոս՝ Յազկերտ սկսաւ կամ մանաւանդ նորոգեց զպատերազմն ընդ Քուշանս։ Եթէ հաւատանք Եղիշէի, ինչպէս հաւանական է՝ Յազկերտ վերջին ճակատը տուաւ իւր տէրութեան երկոտասաներորդ տարին (453), և տարաւ կատարեալ յաղթութիւն ի գլուխ.—«Ի սկզբան երկոտասան ամի թագաւորութեանն իւրոյ գունդ կազմէր անհամար բազմութեամբ... զայս տեսեալ թագաւորին Քուշանաց ոչ հանդուրժէր ելանել ընդ առաջ նորա պատերազմաւ... իսկ սա ասպատակ արձակէր գաւառաց, տեղեաց, վայրաց. առնոյր զբազում բերդըս և զքաղաքս, կուտէր զգերին, զառ և զապուռ և զաւար, ածէր հասուցանէր յերկիրն իւրոյ տէրութեանն» (Եղիշ. էջ 82)։

**5.** Յետ յաղթութեանն ընդդէմ Յունաց՝ Յազկերտ ղրկած էր գունդ ստուար Ատրպատականէ ի Հայս, ի Բագաւան, որ կեդրոն համարուած էր երկրին.—«Զքսան և զմի ամ թագաւորեալ Պարսից Վռամ երկրորդ (Ե.) մեռանի, թողլով զտէրութիւնն որդւոյ իւրում Յազկերտի. որոյ մոռացեալ զհաշտութիւնն՝ իսկ և իսկ ընդ թագաւորելն դիմէ ի վերայ զօրացն Յունաց որք առ Մծբին, հրամայելով գնդին Ատրպատականի ի մեր աշխարհս ելանել. որք եկեալ անկարգապէս բանակեցան հուպ առ Բագնացն աւանի» (Խոր. Գ. կէ.), թերևս ի Շահապիվան, «ի բուն բանակի տեղւոն Արշակունեացն» (Բուզ. Դ. ժԵ.)։ Յետ ամաց ինչ, ըստ Եղիշէի, Յազկերտ Քուշանաց պատերազմին պատճառաւ կոչեց (444) զայրուձին, ինչպէս ուրիշ հպատակ ազգաց՝ նոյնպէս և զՀայոց. «Մեք—ասէ Յազկերտ ի հրովարտակին առ Եղիշէի—ի մտի եդաք անվրէպ խորհրդովք խաղալ գնալ յաշխարհն արևելից... դարձուցանել ի մեզ զտէրութիւնն Քուշանաց. դուք իբրև զհրովարտակս զայս տեսանէք՝ անխափան փաղփաղակի այրուձի գումարեցէք առաջի քան զիս, յանդիման լերուք ինձ յԱպար աշխարհին։... Խաղացին գնացին յիւրաքանչիւր աշխարհաց յօժարութեամբ և անտրտում խնդութեամբ և տիրասէր խորհրդովք, կատարեալ զսպաս զինուորութեան անբերկբալ վաստակովք» (Եղիշ. էջ 18, 19)։ Այսպէս յետ ունելոյ զմիջնաշխարհն (Բագաւան յԱյրարատ) զօրօք, և հեռացուցանելոյ զայրուձին (եթէ ճշմարիտ է պատմութիւն Եղիշէի) բովանդակ կամ զընտիր մասն նորա՝ համարեցաւ պատեհ ժամանակ քաղաքականապէս կապել զերկիրն ընդ տէրութեան, իբր թէ կեդրոնացուցանել, հպատակելով Պարսից օրինաց նոր կարգօք։

**6.** Յազկերտի նոր կարգերն ի Հայս չէին անիրաւ. տիրող տէրութեան իրաւունքն էր իւր օրէնքը զօրել տալ հպատակ երկրի մէջ. թէպէտ չիք տարակոյս, թէ կար ներքին և գաղտնի նպատակ՝ ընդելացուցանելոյ զժողովուրդն տակաւ ի մոգակրօնութիւն. ուստի դժուարին էր, մանաւանդ եկեղեցական մարմնոյն որ կրօնական տեսութեամբ վտանգ կը նշմարէր՝ չխռովել։ Այսպէս յուզումն սկսաւ ի կողմանէ Հայոց, որոց պարտ էր մանաւանդ իմաստութեամբ և հանդարտութեամբ առնուլ զառաջս վտանգին։ Յուզումն ծնաւ երկպառակութիւն։ Մինչ ազգին կէսն հարկ կը համարէր խոհեմութեամբ վարուիլ՝ միւս կէսն ընտրելով խստութիւնը՝ պարզեց ապստամբութեան դրօշը։

**7.** Այս է մեր Վարդանանց կոչուած պատերազմին, կամ Հայոց առաջին ապստամբութեան պատմութիւնը, զոր երկու իրարմէ անկախ պատմիչք, Եղիշէ և Փարպեցին, կը դնեն մեր առջև տար-

բեր պարագաներով։ Այս պատմութեան մէջ կ'ընծայանայ մեզ Վարդան, տէր Մամիկոնեանց և սպարապետ Հայոց՝ իբրև գլուխ Ուխտապահաց, (այս անունը տրուեցաւ ըստ երկու պատմչաց այն կուսակցութեան՝ որ լաւ կը համարէր բռնութիւնը բռնութեամբ վանել, և ունէր գրեթէ զբօսանդակ կղերն յիւր կողմն), և Վասակ, Սիւնեաց տէր, մարզպան՝ իբրև գլուխ Ուրացողաց, (այս անունը կու տան դէթ յիշեալ պատմիչք միւս կուսակցութեան, որ բռնութեամբ դդէմ ունել կը մերժէր իբրև վնասակար)։ Նայելով, ստոյ՝ ազգին տկարութեան, և ապիկարութեան Յունաց, յորս կը յուսար կուսակցութիւնն, և անտի՝ Սասանեանց աճեղ և վայրագ զօրութեան՝ էր արդարև իմաստնագոյն վերջիններուն խորհուրդը։ Չիարդ և իցէ՝ անուրանալի է դէթ, թէ առանց ունենալու ողջոյն ազգն համամիտ՝ յանդգնութիւն մեծ էր մտաբերել յապստամբութիւն։ Դժբախտութեամբ ինչ որ գրուած է այս նշանաւոր դիպաց վրայ՝ է եկեղեցական կամ ուխտապահաց կողմանէ. հակառակ կուսէ գրուած ամենևին չունինք։

Յ. Նշան, թէ պատմութիւնը մեզ հաւատարմութեամբ տրըուած չէ՝ երկու պատմչաց անհամաձայնութիւնն է ըստ պարագայից. ուստի կը մնայ մեզ գուշակելով գտնել ճշմարտութիւնը։ Յայտնի կը տեսնուի սակայն, թէ Փարպեցին է աւելի պատմական, քանզի դիպաց կապակցութիւնն ի նմա է աւելի բնական և պարզ, մինչ առ Եղիշէի կը տեսնուի դիտումն՝ հանել պատմութիւնը բնականէն դուրս, բարձրացունելու համար զիւր դիւցազնն Վարդան, և խոնարհեցունելու, մանաւանդ թէ խորտակելու զհակառակորդ նորա Վասակ։ Բայց Փարպեցին ևս ունի թերի։ Սա առանց տալու մեզ ապստամբութեան պատճառներն՝ կու գայ յանկարծ գործին, ուստի և պատմութեան սկիզբն առ Փարպեցւոյն է յապաւեալ իմն և կրճատ։ Եղիշէ կը դնէ գեղեցիկ յառաջաբան մը իբրև մուտ ի պատմութիւնն, զոր Սասանեանց նախընթաց և իբր աւանդական քաղաքականութեան հետ կապելով՝ կը գտնենք զբուն պատճառ գործոյն։

Յասացելոց անտի վերագոյնն ի Խորենացւոյն, յԵղիշէէ և յայլոց՝ յայտնի է, թէ հալածումն Յազկերտի էր ի վաղուց պատրաստուած և հասած, և պատճառն էր հաւատակցութիւնն Հայոց ընդ Յունաց, և այսը աղագաւ միտումն ազգին յապստամբութիւն, այսինքն ընկենուլ զլուծն պարսկական։ Այս տեսութեամբ հալածումն Յազկերտի էր արդիւնք հին Սասանեան քաղաքականութեան։ Կարծել թէ հալածման խորհուրդն էր ծնունդ Յազկերտի և առանց ամենևին նախընթաց պատճառի՝ չէ պատմական։

Եղիշէ յետ յիշելու համառօտիւ Յազկերտի նախորդներուն հալածիչ քաղաքականութիւնը (էջ 11, 12), և աւելի երկար՝ գխորագէտ հնարս և զբռնութիւնսն Յազկերտի աւելաբանութեամբ, ինչպէս նաև զպատերազմունս նորա և զյաղթութիւնսն ընդդէմ Յունաց և Քուշանաց՝ կու գայ ի սկիզբն հալածման Հայոց, կամ Վարդանանց պատերազմին, որ է գլխաւոր նիւթ նորա։

**Ց.** Յազկերտ, ըստ Եղիշէի, յետ յաղթելու Յունաց և Քուշանաց՝ կը դարձունէ զուշադրութիւն իւր ի Հայս։ Դենշապուհ ոմն, հաւատարիմ թագաւորին, կը ղրկուի ի Հայս (450) առանձին պաշտօնիւ.—«Զմի ոմն ի հաւատարիմ ծառայից իւրոց ի գործ առաքէր յերկիրն Հայոց, որում անուն էր Դենշապուհ, որ եկեալ հասեալ հրամանաւ արքունի, զողջոյն բերեալ զմեծ թագաւորին» (Եղիշ. էջ. 38)։ Խորամանկ Պարսիկն «խաղաղասէր կեղծաւորութեամբ» կը շահի զոմանս ի գլխաւոր նախարարաց ի կողմն թագաւորին։ Զայս կը թուի՝ ակնարկել Եղիշէ յասելն. «քննարկութեամբ զնախարարեանն արկ ընդ միմեանս, և յամենայն տան արար խռովութիւն»։ Առաջին գործ պաշտօնէին էր առնել ընդհանուր աշխարհագիր, պատճառանօք թեթևացունելու հարկերն և զզօրաբաժինն (այրուձին զոր սովոր էին տալ Հայք) արդար և հաւասար բաժանմամբ ըստ թուոյ բնակչաց երկրին.—«Աշխարհագիր առնել ամենայն երկրին Հայոց ի թողութիւն հարկաց և ի թեթևութիւն այրուձիոյ». քանզի, որպէս այլուր ասէ՝ «Այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի»։ Այս առթիւ փոխեց զհազարապետն, յորոյ ձեռս էր ել և մուտ աշխարհին, և փոխանակ Վահանայ Ամատունւոյ, զորմէ, ինչպէս արդէն տեսանք, գովութեամբ կը խօսին Խորենացին և Եղիշէ՝ դրաւ պարսիկ.—«Որ հազարապետն էր աշխարհին՝ իբրև զհայր վերակացու համարեալ էր. գրգռեաց յարոյց զամբաստանութիւն ի վերայ նորա, և հանեալ զնա ի գործոյն՝ փոխանակ նորա պարսիկ ած յաշխարհն» (էջ 40)։ Բայց, ըստ Եղիշէի, ոչ թէ թեթևցան հարկերն, այլ աւելի ծանրացան.—«Բնաւ ո՞վ իսկ կարէ պատմել վասն ծանրութեան մտից և սակից, բաժից և հասից՝ լերանց և դաշտաց և մայրեաց։ Ուստի արժանն էր առնուլ հարիւր դահեկանաւ չափ՝ կրկին առնուին, ոչ ըստ արքունի արժանաւորութեան, այլ հինաբար յափշտակելով, մինչև ինքեանք իսկ մեծապէս զարմանային, թէ ուստի այս ամենայն գանձ ելանէ, զիա՞րդ չէն կայցէ աշխարհն» (Անդ)։ Ընդ աշխարհագրաւ մտան նաև եկեղեցիք և վանորայք. զայս կ՚ակնարկէ ասելն, «Զազատութիւն եկեղեցւոյն արկանէր ընդ ծառայութեամբ». զմիայնակեացս «որ բնակեալ էին ի վանորայս՝ ընդ նովին աշխարհագրաւ արկա-

նէր»։ Եթէ պարտ է հաւատալ Եղիշէի՝ գլխահարկ ևս կար եպիսկոպոսաց և երիցանց տնգամ։ «Դնէին հարկս, կը յաւելու Եղիշէ, ոչ միայն շինաց, այլ և աւերակաց»։ Եղիշէի այս նկարագրին մէջ կայ արդարև աւելաբանութիւն։ Դարձեալ դատերը որ կը տեսնուէին ըստ կանոնական իրաւանց եկեղեցականաց առջև՝ պիտի տեսնուէին ըստ Պարսից օրինաց յատենի պարսիկ դատաւորի որ էր մոգ.—«Ած միւս ևս մոգպետ՝ դատաւոր աշխարհին»․ և այս էր մանաւանդ որ ծանր կը թուէր աւաւելապէս կղերին, իբրև թէ դիտմամբ եղած ի խանգարումն եկեղեցւոյն—«զի զեկեղեցւոյն զփառսն աղաւաղեսցեն», ասէ Եղիշէ ցաւով։

**10.** Այս ամենայն բռնութեանց նպատակն էր, ըստ Եղիշէի, նեղել զհայս, որ ձանձրանալով դառնային յօրէնս մոգութեան յուսով գտանելոյ դիւրութիւն. բայց երբ նոքա մնացին, ասէ, անյողդողդ՝ գրուեցաւ հրովարտակ.—«Իբրև տեսին, թէ այսու ամենայնիւ չկարացաք ձանձրացուցանել՝ յայնժամ յայտնապէս հրաման ետուն մոգաց և մոգպետաց նամակ մի գրել ըստ ձախողակի դենին իւրեանց։ Նամակը, զոր Եղիշէ միայն կը բերէ՝ է գրուած իբր թէ Միհրներսեհէ, բայց արդեամբ ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ համառօտութիւն գրելոցն յԵզնկայ Պարսից քէշին դէմ։ Ոչ սպառնալիք կայ ի նամակին և ոչ պատուէր ընդունելոյ զմոգութիւն, այլ լոկ մեղադրութիւն.—«Եթէ աշխարհն Հոռոմոց, ասէ, առ յույժ յիմարութեան տգիտաբար մոլորեալ են և զրկեալ ի կատարեալ դենէս մերմէ, դուք ևս ընդէ՞ր զհետ նոցա մոլորութեանն ցնորիք»։ Ի վախճանի, ըստ Եղիշէի, կը պատուիրէ հազարապետն (առաջին պաշտօնեայն Միհրներսեհ) առնել բան առ բան պատասխանի նամակին, և կամ անձամբ գալ ի դուռն.—«Արդ երկու իրք կան առաջի ձեր. կամ արարէք բան առ բան նամակիդ պատասխանի, և կամ արիք ի դուռն եկայք, և յանդիման լերուք մեծի հրապարակին»։ Հայք, եթէ հաւատանք Եղիշէի՝ արարին ըստ առաջին հրամանին. առնելով յԱշտիշատ ժողով մեծ եպիսկոպոսաց և նախարարաց՝ գրեցին պատասխանի, ուր երկայն աստուածաբանութեամբ կը պաշտպանեն քրիստոնէական հաւատոյ ճշմարտութիւններն, խառնելով ուրեք ուրեք թշնամանս առ թագաւորն։ Ապաքէն թշնամանք էին թագաւորին ասել այնպիսի ծանր գրուածոյ մէջ. «Սակաւիկ մի եթէ ի բաց թողացուցանէիր զփքումն տէրութեանդ և ընկերաբար գայիր ի պայքար՝ ոչ աւելաբանութիւն համարէիր», ևն. դարձեալ. «Եթէ դու ի տգիտութեան վրիպեալ ես, ես որ հաստատունս գիտեմ՝ ոչ կարեմ գալ զկնի քո մոլորութեանդ. եթէ աշակերտիմ անուսումնութեանդ՝ երկոքինս յանգիւտ կորուստ մատնիմք». դարձեալ. «Այն է ճշմարիտ

Աստուած բոլորեցունց մեր արարիչ. զոր դու աներասանակ արձակ բերանով անահ աներկիւղ համարձակ հայհոյես. թողեալ զՅիսուս Քրիստոս զփրկական անունն՝ Փանդուրակայ որդի անուանես, և մարդ մոլորեցուցիչ կարծես, և զերկնաւոր փրկութիւնն աղաւաղես և անարգես ի կորուստ անձին և աշխարհիս. զոր տալոց և հատուցանելոց ես զանանցական վրէժ տանջանացն յանշէջ հուրն ըսպառանացեալ գեհեննին, հանդերձ ամենայն գործակցովք քոյովք, տաջնովք և միջնովք և վերջնովք»։ Զարմանալի է արդարև, որ Միհրներսեհի նամակին մէջ զոր կը դնէ Եղիշէ՝ չկան այն բանք, «Փանդուրակայ (ըստ Թալմուտական ինչ աւանդութեան ապօրինաւոր հայր Յիսուսի) որդի», «մարդ մոլորեցուցիչ», այլ տաէ լոկ վասն Յիսուսի, թէ «ծնաւ ի կնոջէ ումեմնէ որում անուն էր Մարիամ, և առն նորա Յովսէփ»։ (Անձևացեալ օրինակին յաւելուածն է եկամուտ)։ Ապաքէն անվայել էր քրիստոնէական ոգւոյ, և ոչ արժանի ողջոյն ազգն ընծայեցուցող ժողովի իմաստութեան՝ նախատանօք լուանալ այնպիսի գոռոզ թագաւոր։ Եթէ ժողովը պատշաճ դատեցաւ քրիստոնէական հաւատոյ վարդապետութիւնը գրով յուղարկել առ Յազկերտ՝ կարէր գրել ինչ որ արժան էր, առանց թշնամանաց։ Ուստի շատ հաւանական կը թուի մեզ, թէ երկու նամակներն ևս առ Եղիշէի գիւտ են նորա կամ այն պատմութեան հեղինակին, ո՛ ոք և է։

**11.** Մանաւանդ որ Փարպեցին յայտնապէս ասէ, թէ Հայք այն դիրը որ կը բովանդակէր Պարսից դենին վարդապետութիւնը՝ չկարդացին անգամ, և ոչ իրենց հաւատոյն դաւանութիւնը զոր կը խնդրէր Յազկերտ՝ յանձն առին գրով յուղարկել առ նա, ինչպէս յայտնի է ի պատասխանւոյն, զոր ըստ Փարպեցւոյն գրեցին Հայք առ Յազկերտ. «Ընկալեալ, ասէ, զայսպիսի հրովարտակ (այսինքն զհրովարտակ հրաւիրին ի մոգութիւն) ամենայն Հայոց աւագանւոյն, և ընթերցեալ զամենայն գրեալսն ի հրովարտակին, և զայն ևս իմացեալ, թէ զօրէնս անօրէնութեան իւրեանց գրով տուաքէ առ նոսա՝... ժողովեցան... և գրեցին պատասխանի առ թագաւորն Յազկերտ։... Անհնար է (մեզ), ասեն, որ ի բնէ ուսեալ եմք և հաստատեալ յօրէնս յայս (քրիստոնէութեան), անսալ այդպիսի հրամանի հաւանել։... Այլ վասն օրինաց ձերոց զոր գրեալ էր և տուեալ բերել առ մեզ,... յառաւել պատուելոյ զթագաւորութիւնդ ձեր բանալ անգամ և տեսանել զգրեալսդ ոչ կամեցաք... վասն զի ընդ կարդալն հարկիմք ծաղր առնել. և ոչ զմեր օրէնս գրել և տալ բերել առ ձեզ ըստ հրամանին ձերոյ ի դէպ և պատշաճ համարեցաք։ Այս պատասխանւոյն մէջ ևս կան արդարև կծու բանք, ինչ-

պէս կոչել զկրօնսն Պարսից «սուտ», «ծաղու արժանի», «անմիտ մարդոց բարբանջմունք», բայց այս բանք արհամարհանաց գէթ դենին դէմ են և ոչ թագաւորին անձին։

**12.** Յազկերտ զայրանալով այս պատասխանոյն վրայ, որում չունէր ակն, քանզի գիտէր նախարարաց գոնէ զմի մասն հաւան իւր նամակին՝ կը հարցունէ մոգերուն և աւագանւոյն, որք Հայոց այս համարձակութիւնն, ըստ Փարպեցւոյն, կ՚ընծայեն արտաքին թելադրութեան.—«Լուեալ զբանս նամակին թագաւորն՝ հարցանէր ցմոգսն և ցամենայն Արեաց աւագանին... որ առաւել ևս գրգռէին զթագաւորն ասելով. Եթէ ոչ ուստեք ունէին նոքա յայլուստ օգնականութեան յոյս՝ զայդպիսի բանս ի միտս իսկ իւրեանց նկատել չիշխէին, թո՛ղ թէ նամակաւ առ ձեր թագաւորութիւնդ առաքել» (Փարպ. ԻԵ.)։ բայց Յազկերտ, որ ունէր յիւր կողմն Մարկիանոսի (450—457), յաջորդի Թէոդոսի փոքու, երևելի սպաշտօնեաներն (զԱրդաբուրիոս սպարապետ արևելից և զՓլորենտիոս պատրիկ, վերակացու արևելից. Գաթրըճ. Տիեզ. պամ. Հտ. Բ, 541, Ծան. 1, 2) գիտէր թէ Հայոց չկար յոյս օգնութեան ի Յունաց, և զխիզախելն Հայոց այնպէս՝ կ՚ընծայէր մանաւանդ ազդեցութեան կղերին. ուստի կը կոչէ առանձին հրովարտակաւ զնախարարս Հայոց ի դուռն։ Այսպէս Յազկերտ հեռացունելով նախարարներն կղերին ազդեցութենէն՝ կը յաջողի. կրակապաշտութիւնը կ՚ընդունուի նախարարներէն, որ կ՚արձակուին ի Հայս։

Սպառնալիք, զորս Փարպեցին կը դնէ ի բերան Յազկերտի առ նախարարս, և սոցա պատասխանին առ նա, ինչպէս նաև ինչ որ ասացաւ ի խորհրդեան նախարարաց ընդ միմեանս և ընդ Վարդանայ և սորա ընդ նոսա, վերջապէս ինչ որ նախարարք ի միասին, և առանձինն Վարդան իբրև ի շնորհակալութիւն խօսեցան առ Յազկերտ ի մեկնելն իւրեանց, և այլ սոցին նման բանք որ կան առ Փարպեցւոյն և առ Եղիշէի՝ չեն վաւերական, այլ են ըստ ոճոյ հին պատմագրաց իբրև հռետորական յաւելուածք ի կողմանէ պատմչին, և ըստ իմաստին միայն աւելի կամ նուազ հաւանական։ Եւ այս անտի յայտնի է մանաւանդ, որ ոչ միևնոյն բանք են զորս կը դնեն Եղիշէ և Փարպեցին ի բերան Յազկերտի, նախարարաց և այլոց, երբ կու տան նոցա խօսել, այլ բոլորովին տարբեր, շատ անգամ նաև հակառակ։ Ըստ Եղիշէի՝ նախարարք ընդ հասանելն ի դուռն ո՛չ թէ ըստ սովորութեան կ՚ընդունուին պատուով, այլ անարգանօք կը հանուին արտաքս. ըստ Փարպեցւոյն, որ աւելի հաւանական է՝ նախարարք ընդ հակառակն կ՚ընդունուին մեծամեծներէն և թագաւորէն, և ի վաղիւն կը կազմուի ատեան։ Ըստ Ե-

ղիշէի՝ Թագաւորին մտերիմներէն մին, «որ ի ծածուկ ունէր զանքակ սէրն ի Քրիստոս, քանզի մկրտեալ իսկ էր յաւագանն կենդանի», խրատ կու տայ Նախարարաց՝ առ ժամն ուրանալ զքրիստոնէութիւն և զերծանել, և Նախարարք կ՚անսան նմա։ Առ Փարպեցւոյն չիք այսպիսի բարեպաշտ քրիստոնէի յիշատակութիւն, այլ Նախարարք ինքնին կը խնդրեն Թագաւորէն ժամանակ, և յետ երկար խորհելոյ կ՚որոշեն ընդունել կրակապաշտութիւնը. Վարդան իսկ, որ ի սկզբան կ՚ընդդիմանար այս որոշման՝ կը միաբանի ընդ նոսա։ Այս պատմութիւնն է արդարև հաւանական։ Դարձեալ ըստ Փարպեցւոյն՝ Նախարարք երթալով «ի տուն մոխրանոցին»՝ ոմանք պատճառանօք (կեղծեօք) և ոչ ճշմարտութեամբ կը խոնարհեցունեն իրենց գլուխներն «անոտի պաշտաման», այլք ճշմարտապէս կ՚ուրանան։ Առ Եղիշէի չկայ ո՛չ կրակատուն երթալ և ոչ գլուխ խոնարհեցունել, այլ Նախարարք յիշեալ խրատուին բերնով կ՚իմացունեն Թագաւորին, թէ պիտի կատարեն հրամանը։ Ըստ Փարպեցւոյն՝ Յազկերտ կասկածելով Նախարարաց անկեղծութեան վրայ՝ կը պահէ առ իւր իբրև պատանդ զբդեշխն Վրաց զԱշուշա և զերկուսին որդիս Վասակայ, զԲաբիկ և զԱմիրներսեհ։ Եղիշէ չգիտեր զայս, սակայն կը թուի ճշմարիտ։ Թէ ըստ Փարպեցւոյն և թէ ըստ Եղիշէի՝ Յազկերտ մեծ ուրախութեամբ կ՚արձակէ զնախարարսն բազմութեամբ մոգուց, որոց թիւը կը հանէ Եղիշէ մինչև եօթնհարիւր։ Որովհետև մոգ անուամբ կ՚իմացուէին նաև Թովիչք, օձահմայք և սոցին նման խաբեբաներ՝ մեր միամիտ Փարպեցին համարելով Պարսից մոգերն ևս այնպիսի կախարդներ՝ կը կարծէ թէ մոգքն որ ըղըկուեցան Նախարարաց հետ՝ պիտի ուսուցանէին Հայոց նոյնգունակ կախարդանաց արուեստներ.—«Զորս (զնախարարս) հասանել փութացուցանէին յիւրաքանչիւր աշխարհ, տուեալ ընդ նոսա բազմութիւն սուտ վարդապետաց, զորս և մոգ անուանեն՝ յորդորէին ուսանել զուսմունս ծաղրելի շնչմանց և ընդունչսարկու քարթընջմանց խօսսն, որպէս զօձակոչսն և զորովայնախօսս» (Փարպ. ԻԸ.)։ Նախարարք, որ «զիւրեանց միտս և զբանս և զխորհուրդս միջնորդութեամբ ուրոյ Աւետարանին անքակ և աներկևան առ միմեանս հաստատեալ», և «այնպէս միաբանեալք ուխտիւք և երդմամբ» եկած էին ի դուռն՝ առաջին հարցափորձիւ կը թուլնան։ Այս արդարև զարմանալի է։ Եւս աւելի զարմանալի է Յազկերտի պէս խորագէտ Թագաւորի հաւատալ, թէ Նախարարաց ոմանց պատճառանօք գլուխ խոնարհեցունելովն կրակի՝ բոլոր Հայք ընդունած եղան մոգութիւնը. դժուարին և դժուարին է հաւատալ, թէ Յազկերտ, բոլոր Պարսից աւագանին և մոգերն այնչափ անմիտ էին՝ մինչև

այն կեղծաւորեալ դարձէն խաբուելով՝ «նուէրս ազգի ազգի բազում խնդութեամբ» մատուցանել աստուածոց իւրեանց։ «Խրախ մեծ առնէին յաւուր յայնմիկ, հաշուելով այն օր լինել անշարժ հաստատութիւն թագաւորութեան իւրեանց, կեալ խաղաղութեամբ աներկիւղ այնուհետև յամենայն թշնամեաց» (Փարպ. ԻԸ.)։

**13.** Եղիշէ ուրիշ երազներ կու տայ տեսնել մոգուց. զորօրինակ վիճակաւ որոշել, թէ ո՛ր ազգ ո՛ր խումբին պիտի ելլէր ի բաժին. մինչև վեցերորդ ամիսը փութալ հասանել իւրաքանչիւր յիւր սահմանեալ տեղին. կը յուսային տարեգլխէն մինչև յաջորդ տարեգլուխ բանալ զկարգս եկեղեցւոյ, տաճարաց դուռները կնքել, կողոպտել եկեղեցիներ, նուիրական սպասներն առնուլ յարքունիս, դադարեցուցանել զերգս և զսաղմոսս, տալ փոխել զհանդերձս միանձանց և կուսանաց ի ձև աշխարհական, կրթել յօրէնս մոգութեան կին և այր, ազատ և շինական, խախտել զօրէնս քրիստոնէական ամուսնութեան, թոյլ տալ բազմակնութեան և ազգապիղծ խառնակութեանց, մինչև առնուլ հարց զդստերս և եղբարց զքորս. ուտելի և զենլի անասնոց վրայ կատարել Պարսից խտրութիւններն, այլովքն հանդերձ։ Ահա բանք Եղիշէի. «Գումարէր ընդ նոսա (ընդ նախարարս Հայոց) ի մոգացն ոչ սակաւս, աւելի քան զեւթն հարիւր վարդապետս յղէր ընդ նոսա, և զմեծ ոմն իշխան մոգպետ կացուցանէր ի վերայ նոցա։… Իսկ խոհերականքն այնուհետև յաբուցեալ յիւրաքանչիւր խաւարային դարանաց՝ իղձք լինէին վաղվաղակի զհրամանն կատարել։… Եւ մինչչև հասեալ էին յերկիրն Հայոց՝ փայտ ընկենուին և վիճակս արկանէին, թէ ո՛ր լեզու ո՛րում դասու հասցէ յաշակերտութիւն։… Յանզգայ յարձակմամբ յաւարի առնուլ փութային զգանձս սուրբ եկեղեցեացն… կէտ եդեալ զժամանակն զամիսն վեցերորդ՝ տագնապէին և ստիպէին արքունի հրամանաւ։ Մինչև ի նաւասարդէ ի նաւասարդ յամենայն տեղիս որ իցեն ընդ իշխանութեամբ թագաւորին մեծի՝ բարձցին կարգք եկեղեցւոյ, փակեսցին և կնքեսցին դրունք սուրբ տաճարացն, գրով համարով առցին նուիրեալ սպասքն յարքունիս, լռեսցեն ձայնք սաղմոսացն և դադարեսցեն ընթերցուածք անսուտ մարգարէիցն։ Քահանայք մի՛ իշխեսցեն ի տունս իւրեանց ուսուցանել զժողովուրդս, և հաւատացեալքն ի Քրիստոս արք և կանայք որ բնակեալ են յիւրաքանչիւր մենանոցս՝ փոխեսցեն զհանդերձս իւրեանց ըստ աշխարհական կարգաց։ Դարձեալ և կանայք նախարարացն կալցին զուսումն վարդապետութեան մոգացն։ Ուստերք և դստերք ազատաց և շինականաց կրթեսցին ի հրապարակս նոցուն մոգաց։ Կարճեսցին և արգելցին օրէնք սուրբ ամուսնութեան, զոր ունէին ի նախ-

նեաց ըստ կարգի քրիստոնէութեան, այլ փոխանակ ընդ կնոջ միոյ բազում կանայս արասցեն, զի աճեցեալ բազմասցին ազգք Հայոց։ Դստերք հարանց լինիցին, և քորք՝ եղբարց. մարք ելցեն յանկողինս որդւոց, այլև թոռունք ելցեն յանկողինս հաւուց։ Պատրուճակք մի մեռցին անյազ, եթէ յօդեաց իցէ և եթէ յայծեաց և եթէ յարջառոց և եթէ ի հաւուց և եթէ ի խոզաց։ Հայսք առանց փանդամի մի զանգցին, ծիւղք և քակորք ի կրակ մի եկեսցեն, ձեռք առանց գոմիզոյ մի լուասցին։... Զայս ամենայն որ ասացաք՝ առ ժամանակ մի մինչև ի գլուխ տարւոյն կատարեսցեն ամենեքեան, և զայլն ամենայն առ յապայ պատրաստեսցեն։ Իսկ զայս ամենայն հրաման պատուիրանաց առեալ մոգաց և մոգպետաց՝ զտիւ և զգիշեր փութային հասանել յաշխարհն Հայոց. և առ յոյժ խնդութեանն ոչ երբէք յագէին երկայնութեամբ ճանապարհին» (Եղիշ. 85—89).

Եթէ մոգուց այս երազներն էին Յազկերտի նպատակն՝ և ոչ մին այն երազոց կատարեցաւ, ո՛չ միայն յայնժամ, մինչ Հայք ունէին բաւական զօրութիւն ընդդիմանալոյ, այլ և ոչ յետ պատերազմին Վարդանանց, մինչ Հայք յաղթուեցան իսպառ, և կղերէն երևելիներ հանդերձ կաթողիկոսաւ տարուեցան ի Պարսս, դատապարտեցան ի մահ իբրև ատրուշանաւերք, և պատերազմէն ապրող Նախարարաց մեծ մասը տարուեցաւ կապանօք յաքսոր։ Ո՞ր եկեղեցի փոխուեցաւ ի կրակատուն կամ առնուեցաւ յաւարի. ո՞ր տաճարաց դրունք փակեցան և կնքեցան. եկեղեցւոյ ո՞ր կարգք բարձան կամ սպասք առան յարքունիս։ Այսպիսի ինչ կատարուած չենք գտներ ի պատմութեան Փարպեցւոյն և ոչ Եղիշէի։ (Այսչափ միայն ասէ Եղիշէ, թէ «Յետ աւուրց քսան և հնգից գալստեան մոգուց ի Հայս՝ մոգպետն ինքնին հասանէր քակել զդրունս եկեղեցւոյն. իսկ սուրբն Ղևոնդ երէց ոչ ետ թոյլ». և Փարպեցին ասէ, թէ նոյնպէս ի սկզբան դարձին Նախարարաց Յազկերտէ՝ «մոգուցն գունդք բռնադատէին տանել զկրակս ի տաճար սրբութեանց Տեառն»։ Թերևս այսպիսի ինչ փորձ եղաւ ի սկզբան մոգպետին կողմանէ, բայց այս չէ հաւանական թէ էր տևական և արձակ, հրամանաւ Յազկերտի)։ Չէ յիշուած ուրեք, թէ Պարսիկք լռեցուցին սաղմոսներ, կամ դադրեցուցին ընթերցուածներ։ Չէ յիշուած, թէ միայնակեացք, արք և կանայք, բռնի աշխարհականացան, թէ կանայք Նախարարաց, կամ ուստերք և դստերք ազատաց բռնադատեցան ուսանել մոգերուն վարդապետութիւնը, կամ թէ արգելուեցան ամուսնութեան օրէնք, արք բռնադատեցան առնուլ բազում կանայս, դստերք լինել հարց և քորք եղբարց, մարք որդւոց, և թոռունք

հաւուց յանկողինս ելանել, կամ թէ Պարսից խորութիւններն գըտան մուտ ի Հայս։ Չէ ամենևին ճշմարիտ, թէ այս բռնութիւններն ընել էր նպատակն Յազկերտի, կամ թէ մոգերը գացին այնպիսի հրամանաւ և խորհրդով։ Կաթողիկոսութիւնը կեցաւ կանգուն ինչպէս յառաջ՝ նոյնպէս յետոյ. քրիստոնէութիւնը մնաց միշտ կրօնք Հայոց. այնչափ գաւառներէն և ոչ մին ընդունեցաւ կրակապաշտութիւնը, թէպէտ հաւանական է թէ մոգութիւնը քարոզուեցաւ և ատրուշաններ շինուեցան, որպէս ասէ Փարպեցին, «յականաւոր և ի գեղեցիկ տեղիս»։ Սիւնիք անգամ, աւելի բամբասեալն ի գաւառս Հայոց իբրև երկիր իշխանութեան Վասակայ, և յետ նորա, ըստ Փարպեցւոյն (ԽԶ), Վարազվաղանայ, ուրացելոց՝ էր և եղաւ միշտ բարեպաշտագոյնն ի գաւառս Հայոց։ Բակուր և ըստ Փարպեցւոյն «լաւն» Բաբգէն, Սիւնիք՝ էին ընդ կապեալ նախարարս, վերջինն յետոյ, երկրորդ ապստամբութեան ժամանակ՝ նիզակակից Վահանայ, և որ կարգեցաւ ի Հայոց իշխան տէրութեանն Սիւնեաց (Փարպ. ԿԸ.)։

**14.** Ի՞նչ էր ուրեմն Յազկերտի նպատակը։ Յազկերտի նպատակն էր արդարև ածել զՀայս ի մոգութիւն, բայց ոչ այնպէս ինչպէս կը ցուցնէ մեզ Փարպեցւոյն և մանաւանդ Եղիշէի պատմութիւնն, այսինքն յանկարծ և բռնաբար, այլ մեղմով և հնարիւք։ Հայոց մի մասն, մանաւանդ կղերն, գուշակելով Յազկերտի խորհուրդը՝ յանկարծ ուրիշ գոյն տուաւ գործին, և երկոքին պատմիչք մեր, մանաւանդ Եղիշէ՝ այս գունով կը նկարեն մեզ պատմութիւնը։ Յազկերտի քաղաքականութիւնն էր՝ տալ նախարարաց ընդունել գէթ առ երեսս, իբրև քաղաքական հարկ կամ իբրև տէրութեան կրօնք՝ մոգութիւնը, այսինքն տալ մուտ կրակապաշտութեան իւրաքանչիւր իւր երկրին մէջ, թոյլ տալով շինել ատրուշաններ, հաստատել մոգութեան դպրոցներ, Պարսից քաղաքական օրինաց հպատակեցունել երկիրը, և այնպէս ընդելացունելով ժողովուրդը մեղմով պարսկական քաղաքականութեան և դենին՝ հեռացունել ազգն ի Յունաց։ Յայս միտս էր և Յազկերտ Ա, որ յետ Վռամշապհոյ թագաւորեցուց Հայոց զորդին իւր այս նպատակաւ, ինչպէս կը դիտէ Խորենացին. «Յետ որոյ Յազկերտ (Ա.) ոչ ևս ի նոցանէ, այլ զՇապուհ զորդի իւր թագաւորեցուցեալ Հայոց, հնարս դառնութեան խորհելով՝ իբր թէ հանապազ առ նմա նախարարքն յանդչիցին խօսիւք, տուրևառիւք, խրախճանութեամբ. զի մարթ լիցի զնոսա և ի դէն մազդեզանց սաղապեցուցանել, որով ամենևիմբ զատչիցին ի Յունաց» (Խոր. Գ. ԾԵ.)։ Նոյն խորհրդով սոյն Յազկերտ (Բ.), ինչպէս արդէն տեսանք՝ ղրկեց զՊենշապուհ, որոյ գլխաւոր պաշտօնն

էր շահել նախարարներն ի կողմն Թագաւորին, և յաջողեցաւ իսկ գէթ ըստ մասին, որպէս ակնարկէ Եղիշէ, թէ «բանսարկութեամբ արկ զնախարարեանն ընդ միմեանս, և յամենայն տան արար խռովութիւն»։ Պատմութեան մէջ շատ պարագաներ կը ցուցնեն, թէ Յազկերտի դիտումն էր նախարարներն որսալ և տալ նոցա շնորհել մուտ կրակապաշտութեան իւրաքանչիւր իւր երկրին մէջ իբրև տէրութեան կրօնք հաւասար քրիստոնէութեան։ Ի պատմութենէ Փարպեցւոյն կը տեսնենք, թէ Յազկերտի նամակը կ՚ուղղուի իւրաքանչիւր նախարարի, և ոչ ընդհանուր ազգին.—«Արարեալ հրովարտակս առ ամենայն Հայոց աւագանին՝ գրէր այսպէս»։ Նախարարք կը կոչուին ի դուռն. առ երեսս անգամ գիջանելն նոցա կամաց Թագաւորին՝ կը համարուի բաւական, և կ՚արձակուին մոգերով։ Անտեղի է քան զայս աւելի դիտաւորութիւններ ընծայել Յազկերտի, այսինքն խլել քրիստոնէութիւնն արմատէն բռնութեամբ, տալով քանդել եկեղեցիներ, ամէն օրէնք և կարգ քրիստոնէական յանկարծ և միանգամայն տապալել, և այս ոչ ի Հայս միայն, այլ և ի Վիրս և յԱղուանս, գործ՝ որ ոչ ի Միջագետս և ուրիշ քրիստոնեայ երկիրներ որ էին ընդ իշխանութեամբ Պարսից, և ոչ իսկ ի Պարսկաստան եղաւ երբէք, սաստիկ հալածանաց ժամանակներ անգամ։ Քրիստոնէութիւնը թոյլ տուեալ էր Սասանեանց երկիրներուն մէջ, թէև ընդ հալածանօք։ Ինքն իսկ Եղիշէ կը վկայէ, թէ քրիստոնեայք ի Պարսկաստան Շապհոյ Բ․ի ժամանակէն այնչափ բազմացած էին՝ «մինչև յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին, որ զանցուցանէր պայծառութեամբ զԹագաւորաբնակ արքունեօքն։ Շինէին և վկայարանս իմն անուանեալս, և զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին, և յամենայն տեղիս, յապատս և յանապատս միայնանոցս շինէին։ Եւ իբրև ոչինչ երևէր յայտնի օգնութիւն ուստեք՝ աճելով աճէին և բազմանալով բազմանային, և մարմնաւոր մեծութեամբք մեծանային» (Եղիշ. էջ 102)։

**15.** Յազկերտի դիտաւորութեան վրայ բաւական համարելով այսչափ՝ գանք ի կարգ անդր պատմութեան։ Նախարարք մոգերով հանդերձ յետ երկար ճանապարհորդութեան կը հասնին ի Հայս։ Փարպեցին տխուր, բայց բնական կերպով կը նկարագրէ զընդունելութիւնն որ եղաւ նախարարաց յազգէն.—«Եկեալ հասանէին առանուտեարքն Հայոց հանդերձ սեպհօքն և որ ընդ ինքեանս՝ յաշխարհս Հայոց, ողջք և ոչ ողջք, կենդանի կիսամեռք։... Ելանէին ընդ առաջ նոցա դասք պաշտօնէիցն Քրիստոսի, բերելով ընդ ինքեանս զնշան կենսատու Խաչին և զնշխարս սրբոյ առաքելանման նահատակին Գրիգորի։... Անդ էր լսել զձայն լալոյ և զձայն գու-

ժի, գոչիւնս ողբոց և բարբառ ճչոյ. տղայք անձկոտք ի գրկաց Հարց իւրեանց պակուցեալք փախչէին, կարծելով այլափոխեալս իմն, և ոչ զնոյնս նկատելով կերպարանս զարհուրէին. սակայն Հայելով յերեսս մարցն, զորս տեսանէին կողկողագին միշտ և արտօսրաքուխս, յաղագս որոյ և ինքեանք յարտասուս հարեալ տղայքն՝ ոչ ոք կարէր լռեցուցանել ի դայեկացն կամ ի դաստիարակացն։ Ընդ որ Հայեցեալ այնոցիկ, որք պատճառանօք և ոչ ճշմարտութեամբ ուրացողքն էին՝ փութանակի և առժամայն կամէին յառնել և ընդ ինքեանց սուրն ելանել, որոց ոչ պիտէր առ վայր մի կեալն, քան թէ զայնպիսի տեսանել զաղէտս և ժուժկալել... քանզի ոչ ոք Հաւանէր ընդ նոսա կամակից լինել սեղանոյ, ոչ կին, ոչ որդի, ոչ ազատ, ոչ ծառայ ոք և ոչ սպասաւորք։ Եւ էր այնուհետև տեսանել զամենեսեան քակտեալս ի միմեանց և պատառեալս։... Վասն ամենայնի այսորիկ սուգ առեալ կոծէին կանայք աւագ ազատացն և այրիք ի Հրապարակս, մանկամարդ առնականայք, օրիորդք ի սրահս դռնափակեալս, Հարսունք ի սենեակս։ Սուրբ եպիսկոպոսք պատուական քահանայիւք և եկեղեցական ուխտիւ, ծերովք և տղայովք և ամենայն ժողովրդոցն բազմութեամբ՝ կառաչ բարձեալ լային ի տանն Աստուծոյ։ Եւ էր տեսանել ծեփեալ արեանց Հոսմամբք զամենայն դէմս ուղղափառ մարդոց» (Փարպ. ԻԹ.)։

Եղիշէ, ըստ իւրում սովորութեան, երկայն և անհամ կրկնումներով ըստ քմաց կ՚ընդլայնէ Նախարարաց «յանձնառութեան», այսինքն զիջման ազդեցութիւնը ո՛չ Հայոց վրայ միայն, այլ և ուրիշ դրացի քրիստոնեայ ազգաց, ո՛չ միայն ի Հայս, այլ և անդէն ի բանակին, այսինքն ի Պարսս. «Անդէն ի մեծ բանակին Պարսից՝ յազգաց ազգաց որք են Հաւատացեալ ի սուրբ Աւետարանն Քրիստոսի, իբրև տեսին զչար յանձնառութիւնն Հայոց՝ յոյժ Հարան ի միտս իւրեանց, և կործանեցան անկան ի վերայ դիմաց իւրեանց։ Բազումք ի նոցանէ թախծեալք ի սուգ ծանրութեան, Հարեալ յոգիս և դառնացեալ յարտասուս՝ եկին և յանդիմանեցին զնախարարեանն և յոյժ գարշեցին զուխտ քահանայութեանն։ Զգուէին զամենեսեան և ասէին. Զի՞ առնիցէք զսուրբ կտակարանսդ, և կամ յո՞ տանիցէք զսպաս տէրունեան սեղանոյն. մոռանայցէ՞ք արդեօք զհոգևոր օրհնութիւնսդ, և կամ լռեալ դադարիցէ՞ք ի մարգարէական ձայնիցդ։ Կափուցէք զաչս յընթերցուածոց, և խցէք զականջս ի լսելոյ. միթէ զմտացդ անմոռացութիւն ո՞չ յիշիցէք. զի՞նչ առնիցէք զպատուիրեալսն ի Տեառնէ. Որ ուրասցի զիս առաջի մարդկան՝ յուրացայց եղէց և ես առաջի Հօր իմոյ որ յերկինս է և Հրեշտակաց սրբոց։ Վարդապետք էիք առաքելական քարոզութեանցն, արդ աշակերտք լի-

նիցէք մոլար խաբէութեանն։ Ուսուցիչք էիք ճշմարտութեանն, արդ ուսուցանէք զպատիր խաբէութիւն մոգաց։ Քարոզք էիք արարչական զօրութեանցն, արդ զտարերս աստուածս խոստովանիք։ Ցանդիմանիչք էիք ստութեան, արդ և քան զսուտն ստագոյնք լինիցիք։ Ի Հուր և ի Հոգի էիք մկրտեալք, արդ ի մոխիր և յաճիւն թաթաւիցիք։ Կենդանի մարմնով և անմահ արեամբ էիք սնեալ, արդ ի ճենճեր զոհից և ի շարաւս աղտեղիս մրճոտիցիք։ Տաճար էիք Հոգւոյն սրբոյ, արդ զոհարան դիւաց լինիցիք։ Քրիստոսազգեացք էիք ի մանկութենէ, արդ մերկացեալք ի փառացն՝ դիւաբար արեգական կաքաւիցէք։ Ժառանգ էիք արքայութեանն, արդ անձամբ զանձինս արկէք ի ժառանգ գեհենին։ Նոցա է սպառնացեալ Հուրն անշէջ, ընդէ՞ր դուք ընդ նոսա այրեցեալ տոչորեցայք։ Նոցա պարարի որդն անմահ, իսկ արդ դուք պարարիցէք զմարմինս ձեր նմա ի կերակուր։ Խաւարն արտաքին Նոցա թանձրացեալ պահի, դուք լուսազգեստք ընդէ՞ր յուղարկեցայք ընդ նոսա ի նոյն խաւար։ Նոքա ի վաղնջուց հետէ էին իսկ կուրացեալք, դուք զկնի կուրացն կուրացարուք։ Նոցա էր փորեալ զխորխորատն, դուք ընդէ՞ր լցէք յառաջագոյն։ Ե՞րբ ուսանիցիք զբազմաթիւ անուանս աստուածոցն նոցա, այն որ չիք ուրեք ի միջի և ոչ մի։ Թեթևացեալք ի ծանր բեռանց՝ անձին անձամբ առէք զբեռն ծանրութեան. ազատեալք ի մանկութենէ՝ չարաչար մտէք յանազատելի ծառայութիւնն։ Եթէ գիտէիք և երևէր ձեզ յայտնի՝ սուգ առին երկինք ի վերայ ձեր, և թախծեցաւ երկիրս ի ներքոյ ոտից ձերոց։ Հրեշտակք ի վերուստ են ձեզ բարկացեալք, և ի յերկրէս մարտիրոսքն են ձեզ ցասուցեալք։ Ողորմիմ, ողորմիմ սիրելեաց ձերոց, և բազում անգամ ողորմիմ անձանց ձերոց։ Զի թէ մարդոյ փրկեալ էր զձեզ ի ծառայութենէ, և դուք անձամբ զանձինս այլում ի ծառայութիւն արկանէիք՝ ի մեծ բարկութիւն բրդէիք զառաջին տէրն ձեր։ Իսկ արդ զի՞նչ առնիցէք զաստուածաասաստ Հրամանն. Ես եմ Աստուած և չիք այլ ոք բայց յինէն, և ոչ զկնի իմ այլ ոք լիցի Աստուած։... Դուք էիք մեր ամուր պարիսպ ապաստանի. յորժամ աստի վտանգ հասանէր՝ առ ձեզ յանդորր ելանէաք. արդ մեծ ամուրդ այդ հիմն ի վեր տապալեցաւ։ Դուք էիք մեր պարծանս առ թշնամիսն ճշմարտութեան, արդ դուք էք մեր նախատինք առ նոյն թշնամիս։ Ցայժմ վասն ձերոյ ճշմարիտ հաւատոցն և ի մեզ փոքր ի շատէ խնայէին, և արդ ի պատճառս ձեր և զմեզ անողորմ դատին։ Ոչ միայն զանձանց դատաստան տալոց էք առաջի ահեղ ատենին Աստուծոյ, այլ և բազմաց ամենեցուն որ ի ձեր պատճառս և զնոսա ես չարչարեսցեն» (Եղիշ. էջ 91—96)։ Չիք տարակոյս, թէ օտար-

ազգի բարեպաշտ քրիստոնեայք, Վիր, Աղուան, եթէ կային ի բանակին՝ չհաճեցան նախարարաց զիջման. սակայն յայտնի է, թէ այն երկայն գանգատ, զոր Եղիշէ կը դնէ ի բերան նոցա՝ գիւտ է Եղիշէի։

Ըստ Եղիշէի՝ հայ կղերն նոքա, որ նախարարաց հետ էին՝ խռովեցան յոյժ. իսկոյն գուժկան հասաւ ի Հայս, թէ նախարարք յանձն առին կրակապաշտութիւնը։ Անդէն սփռեցան եպիսկոպոսունք բոլոր երկրին մէջ վառել կազմել զժողովուրդն.—«Յայնմ ժամանակի քահանայքն որ էին անդէն ի զօրուն, առ չժուժել որոտիցն բարկութեան՝ քակեալ որոշեցան ի նախարարացն և յամենայն բազմութենէն, և զմի ոմն դեսպան ձիավ առաքեցին փութապէս յաշխարհն Հայոց։ Գոյժ ի բերան առեալ և զօձիս պատառեալ, հասեալ ի ժողովս եպիսկոպոսացն, մեծապէս յարտասուս հարեալ, կայր և պատմէր զամենայն անցս չարեացն, այլ ոչ յայտնէր նոցա զծածկութիւն խորհրդոցն։ Յայնմ ժամանակի սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, և առաքեցին զքորեպիսկոպոսս ի գիւղս և յագարակս և ի բազում ամուրս լեռնային գաւառացն։ Դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, զքահանայից և զմենակեցաց. խրատ եդին, պնդեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի» (Եղիշ. անդ)։ Եթէ պարտ է հաւատալ Եղիշէի՝ յայն աստիճան հասաւ ժողովրդեան մոլեռանդութիւնը, մինչև ուխտ դնել, թէ հայր չխնայէ որդւոյ, և որդի՝ հօր, կին ելլէ ամուսնոյն դէմ, և ծառայ՝ տեառն.—«Յառաջին բան խորհրդին այս հաստատեցաւ. Ձեռն եղբօր հարազատի ի մերձաւոր իւր լիցի, որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ. և մի խնայեսցէ հայր յորդի, և մի ակն առնուցու որդի հօր պատուոյն։ Կին կռուեսցի ընդ առն ամուսնոյ, և ծառայ դարձցի ընդդէմ տեառն իւրոյ։ Օրէնք աստուածային կացցեն թագաւոր ի վերայ ամենայնի, և ի նմին օրինաց ընկալցին յանցաւորք զպատիժս դատապարտութեան։ Եւ իբրև այս այսպէս հաստատեցաւ կազմեցաւ՝ երևեցան ամենեքեան զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին, ո՛չ միայն արանց քաջաց, այլև կանանց առնականաց» (Անդ)։ Չէ պարտ բան առ բան առնուլ Եղիշէի պատմութեան այս մասն ևս։

Տեղին, ուր եկած էին նախարարք ի դարձին ի Պարսից հանդերձ մոգօք՝ էր ըստ Եղիշէի Անգղ, զոր կ'անուանէ գիւղաքաղաք, ի Ծաղկոտն գաւառի յարևմտից Բագրևանդայ.—«Իսկ գունդն Հայոց ամենայն օգնականօքն և մոգացն բազմութեամբ եկին հասին յաշխարհն Հայոց, ի գիւղաքաղաք մի մեծ, որում անուն էր Անգղ»

(Անգ)։ Ըստ Փարպեցւոյն՝ եկան ի Բագրեւանդ, մօտ ի Զարեհաւան, ուր և եղաւ յետոյ մոգուց սպանումը (Փարպ. ԼԲ.)։ Փարպեցին ևս կը յիշէ զԱնգղ իբրև բերդ, ի խօսելն զդարձէն Վարդանայ յետ կէս ճանապարհէն, մինչ կ'երթար ընտանեօք հանդերձ վտարանդի ի Յոյնս։ Աշխարհագրութիւն Փարպեցւոյն է ուղղագոյն և գիտող պատմութեան։ Արդարև բնական էր Վարդանայ, որ կու գար յԱրամանայ, այն է ի հիւսիսոյ արևմտից, Բասենոյ սահմանէն՝ գալ դէպ ուղիղ յԱնգղ, որ էր ի գաւառին Ծաղկէոյ, քան նախարարաց որ կու գային Պարսկաստանէ, այն է ի հարաւոյ արևելից, և որոց մօտագոյն էր Բագրևանդ ուր էր Զարեհաւան։

**16.** Զիարդ և իցէ՝ մենք գանք միւսանգամ առ Փարպեցին։ Վարդան տեսնելով ժողովրդեան ողբը նախարարաց զիջման համար, որ իբրև ուրացութիւն հռչակուած էր՝ իւր եղբարբն Համայեկաւ և բոլոր ընտանեօք կը մեկնի երթալ ի Յոյնս, բայց պատգամաւորներ հասնելով ի Հայոց՝ կը համոզեցունեն զնա դառնալ յետս. —«Տեսեալ զայս ամենայն չարիս տեառն Մամիկոնէից և սպարապետին Վարդանայ... արհամարհեալ զամենայն մեծութիւն անցաւոր կենցաղոյս՝... հանդերձ դրամբ և ընտանեօք դէմ եդեալ ի կողմանս իշխանութեանն Յունաց ճեպէին։... Յանկարծակի իրազգած եղեալ այսպիսի խորհրդոյ և գնացից յաշխարհէս Հայոց զմեծ սպարապետէն Հայոց... իշխանին Սիւնեաց Վասակայ որ և մարզպան էր Հայոց ի ժամանակին, և ամենայն տանուտերացն Հայոց և սեպհացըն՝ խռովեալ սրտիւ զարհուրէին... քանզի տեղեկացեալ ճանաչէին ամենեքեան, թէ առանց առաջնորդութեան ազգին այնորիկ և ոչ մի ինչ իրք և գործք աշխարհիս երթեալ էին ի գլուխ։ Խորհուրդ ի մէջ առեալ... իշխանին Սիւնեաց Վասակայ և արարեալ նամակ իւրով մատանեաւ՝ հրամայէր նամականի առնել և այլ ամենայն աւագ տանուտերացն Հայոց. տալ բերել և զկնքեալ Աւետարանն ուխտին, և արս պատուականս յայտ արարեալ, ի քահանայից՝ զՂևոնդ երէց և զերանելի երէցն Երեմիա և զերանելի երէցն Խորէն Մրենայ, և արս աւագս ի տանուտերացն Հայոց— զիշխանն Արշարունեաց Արշաւիր, զիշխանն Դիմաքսենից զՀմայեակ, և զիշխանն Աբեղենից զԳազրիկ, և տուեալ ցնոսա զամենայն նամականին և զԱւետարանն երդման՝ դեսպանս արձակէր զկնի նորա, որ հասեալ գտանէին զնա և որք ընդ նմայն էին ի գեւղն Արամանայ ի նահանգին Բագրևանդայ, մերձակայ սահմանակից Բասենոյ և Տուարածատափայ։ Եւ ազդ արարեալ՝ մտանէին զառաջեաւ, պատմէին զպատճառս իւրեանց փութանակի հասանելոյն առ նոսա։... Զայս ամենայն բանս լուեալ ի քահանայիցն և ի նախարար պատ-

դամաւորացն սուրբ սպարապետին Հայոց Վարդանայ հանդերձ երանելի եղբարբքն իւրովք, և զսուրբ Աւետարանն ուխտին տեսեալ և զնամականին կարգացեալ՚... դարձան անդրէն առ ընկերսն իւրեանց ի բանակն Հայոց» (Փարպ. Լ, ԼԱ.)։

**17.** Ըստ Փարպեցւոյն՝ Վարդան կ՚անցունէ ամբողջ գարունն սպասելով զօրաց ժողովելուն, և այնպէս ի սկզբան ամարայնոյն կու գայ ի Ծաղկոտն գաւառ, սահմանակից Բագրևանդայ ուր էին Պարսիկք, և կը դադարի տօթոյ ժամանակ.—«Զգեալ բանի զաւուրս գարնայնոյն յերկար, մինչև յաւուրս տօթոյն մօտելոյ, և հասեալ ամիսք տօթոյն ջերմութեան՝ չու արարեալ ամենայն բազմութիւնն Հայոց ի տեղիս հովոց, գային հասանէին ի գաւառն որ կոչի Ծաղկոտն, մերձ ի բերդն ամուր զոր Անգղն անուանեն. զայն տեղօք արարեալ բանակետեղս արանց՝ դադարէին անդ զաւուրս տօթոյն» (Փարպ. անդ)։ Վարդան այսպէս կը դանդաղէր պատանդներուն պատճառաւ, որոց կեանքն ի վտանգի էր՝ եթէ ապստամբութիւնն յայտնուէր.—«Կամաւ արգելեալ համբերէր (Վարդան) իրացն, հոգալով... յաղագս Աշուշայի Վրաց բդեշխի և որդւոց իշխանին Սիւնեաց Վասակայ, զորս արգելեալ պահեաց անդէն ի դրան թագաւորն Պարսից Յազկերտ... և զայս խորհէր իբրև զբարեսէր, թէ մի գուցէ դժուար ինչ արանցն ի թագաւորէն դիպի, և վնասեսցին» (Անդ. ԼԱ.)։

**18.** Հոս միամիտ Փարպեցին կը յայտնէ գաղտնութիւն մի, որ պատիւ չբերեր հաւատոյ համար կռուող նահատակի, որպիսի էր Վահան Ամատունի։ Այս Վահան կը փութացունէր զՎարդան աճապարել ի վեր հանել ապստամբութեան խորհուրդը, ոչ թէ բարեպաշտ մտօք, այլ առ ատելութեանն զոր ունէր ընդ Վասակայ. վասնզի կը խորհէր, թէ եթէ Վասակ չհաւանէր ապստամբութեանն՝ թերևս սպանուէր ապստամբ կուսակցութենէն. իսկ եթէ հաւանէր՝ երկու որդիք նորա որ պատանդ էին առ թագաւորին՝ սպանուէին հաւանականապէս, կամ մատնուէին բանտից և կապանաց.—«Բայց իշխանն Ամատունեաց Վահան ոչ տայր դուլ և դադար զօրավարին Հայոց Վարդանայ. այլ մերթ ինքեամբ և մերթ այլովք ստիպէր վաղվաղակի յայտնել զիրս ապստամբութեանն, կարծեցուցանելով՝ որպէս հոգւոյն և եթ հոգալ զգուշ փրկութեան. բայց ոչ հոգալով ինչ յայն միտս, այլ վասն մթերից առաջին ոխութեանն, զոր ունէին առ միմեանս իշխանն Սիւնեաց Վասակ և տէրն Ամատունեաց Վահան։ Հայեցեալ նկատէր (սա), թէ կամ չհաւանեալ ապստամբել իշխանն Սիւնեաց Վասակ մեռանի յիւրոցն ընկերաց անարժան մահուամբ, կամ թէ հաւանեալ առ վտանգին

ապստամբել՝ արգելեալ անդէն ի դրանն որդիքն երկոքեան չարաչար կենօք վտանգեալ պատահեն մահու, և կամ բազմաժամանակեայ կարևոր կապանաց և բանտից դիպեալք՝ տանջին անխնայ» (Անդ)։

**19.** Փարպեցւոյն այս պատմութիւնն ևս կը ցուցնէ, թէ Վասակ չէր ի սկզբանէ անտի համամիտ ընդ թագաւորին, այլ թէ ոչ չէր ուներ երկիւղ իւր որդւոցն սպանման համար, մանաւանդ թէ և ոչ Յազկերտ կ՚արգելուր զորդիս նորա իբրև պատանդ։ Սուտ է և զրպարտութիւն, ինչպէս յայտնի է յընթացից և ի գործոց Վասակայ, ըստ վաւերականագոյն պատմութեան Փարպեցւոյն, թէ այս «խորհրդական, հանճարեղ և յառաջիմաց» անձն—(Կորիւն)—էր հակառակ քրիստոնէութեան և թշնամի ազգին, ինչպէս բամբասուած է յանիրաւի։ Դարձեալ, եթէ Վասակ վաղուց էր ուրացեալ և գաղտ ի բանի ընդ Յազկերտի, մի՞թէ կը խռովէ՞ր ընդ մեկնել Վարդանայ իւրովքն երթալ ի Յոյնս, և կը դարձունէ՞ր զնա յետս նամականւով և դեսպաններով. ո՞չ ապաքէն կ՚ուրախանար մանաւանդ, ինչպէս նաև կուսակիցք նորա, որ այնպիսի նշանաւոր անձ մը, որպիսի էր Վարդան, պակսեցաւ հանդերձ իւրովքն ապստամբութեան (ուխտապահաց) խումբէն։ Այնչափ խռովելն և յուզել Վասակայ և իւրոցն՝ կը ցուցնէ, թէ չէին նոքա միտեալ յուրացութիւն, ուստի և զատչելն նոցա յետոյ ի Վարդանեանց ունէր այլ պատճառ, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։ Անհնար էր Հայոց ընդունել կրակապաշտութիւնն ազգովին, իսկ զինու ընդդիմանալ Յազկերտի՝ էր վտանգաւոր. ուստի լաւագոյն հնարքն էր՝ թողուլ մոգուց կատարել զիւրեանց պաշտօնն, այն է քարոզել մոգութիւնն ի Հայս, հաստատել կրակի պաշտօնը՝ շինելով ատրուշաններ։ Անտարակոյս մոգքն արհամարհուելով ժողովուրդէն՝ կամ յուսահատեալ պիտի մեկնէին, և կամ գործը պիտի չգտնէր յաջողութիւն։ Եւ եղաւ իսկ այնպէս, ինչպէս կը վկայէ Փարպեցին.—«Իսկ մոգքն, զորս ի դրանէն նախարարքն Հայոց ուսուցիչս ածեալ էին ընդ ինքեանս, իբրև տեսին, թէ արհամարհեալ են յաչս նոցա ինքեանք և օրէնք նոցա, քանզի կանայք նախարարացն, զորս կարծէին մոգքն աշակերտել՝ այնք և տեսանել անգամ գարշէին զնոսա, այլև զորդիս իւրեանց և զդստերս պատուիրէին սաստիկ դաստիարակացն չանցուցանել երբէք առ նոքօք մօտ. իսկ արքն որք պատճառանօք կարծեցուցանէին զինքեանս ուրացողս՝ սուտ վարդապետացն և հաց ուտել չտային յծոյլ առաջի իւրեանց, և շրջէին (մոգքն) ողորմելի սովամահք. գնալ ի բաց և փախչել չիշխէին, և կալն առ նոսա՝ զմահ ծանուցանէր նոցա և զկորուստ, և գրել գաղտ ի դուռն զիրս ապըս-

տամբութեանն փութանալին» (Փարպ. ԼԲ.)։ Կղերին պարտքն էր փոխանակ գաւառ գաւառ շրջելով յապստամբութիւն գրգռելոյ ժողովուրդը՝ վառել զնոսա հոգեւորապէս ընդդէմ մօտալուտ վտանգին։ Իսկ Նախարարք, յետ զիջանելոյ կամաց Թագաւորին—տալոյ մուտ մօգուց իւրաքանչիւր յերկիր իւր՝ կրնային հաստատուն մնալ յուխտին իւրեանց յԱւետարանն, ինչպէս արարին իսկ. բայց այս պարտէր լինել ի նպաստ հաստատութեան նոցա յԱւետարանն, և ոչ ի նպաստ ապստամբութեան, որ, թմբէ, արդէն որոշեալ էր ի միտս Վարդանայ և նորայոց։ Ուստի տեսեալ Վարդանայ, թէ այս խորհուրդը կը հռչակուէր, և մեծ վնաս պիտի հասնէր դանդաղելէն, առնելով ժողով եպիսկոպոսաց և նախարարաց՝ որոշեց յայտնել զիրսն պարզպանին Վասակայ, որ տակաւին չէր գիտեր։ Ապա յանկարծ մանելով նա և ընկերք նորա բազմութեամբ առ Վասակ՝ յայտնեցին նմա խորհուրդը և կ'ստիպէին զնա միաբանել ընդ նոսա։ Վասակ ընդդիմացաւ զառաջինն, կամ, որպէս ասէ Փարպեցին՝ ցուցուց դանդաղութիւն։ Ցիրաւի կը դանդաղէր Վասակ, նախ՝ վասն զի եբրև մարզպան ինքն կը կրէր պատասխանատուութեան բոլոր ծանրութիւնը, և ունէր երկիւղ իւր որդւոց համար. երկրորդ՝ հաւանական է թէ անխորհուրդ եռանդեան արդիւնք կը գտնէր գործը, ինչպէս կը վկայէ ինքն իսկ Փարպեցին, թէ Վարդան ոչ այնչափ յաղթութեան յուսով, որչափ մարտիրոսութեան փափաքով մղուած էր յայն խորհուրդ.—«Զխորհէր (Վարդան) զյաղթութեան ինչ անուն գտանել, այլ զհեղումն արեան անձինն ի վերայ շինութեան ուխտի եկեղեցւոյ տենչայր ըմբռնել»։ Թէպէտ Փարպեցին Վասակայ յապաղումը կ'ընծայէ մանաւանդ չարամտութեան նորա. —«Զանայր յապաղել նա (Վասակ), մի՝ վասն որդւոցն իւրոց որք ի դրանն էին, և դարձեալ՝ զի և կեանքն իւր իսկ ի խնամս չարին միտէին հանապազ»։ Զիարդ և իցէ՝ Վասակ, ըստ Փարպեցւոյն, «թէպէտ ոչ կամաւ՝ սակայն ի հարկէ յանձն առեալ միաբանէր ընդ նոսա»։ Ապա եպիսկոպոսունք և երիցունք բերել տուին կնքեալ Աւետարանը, և տալով երդնուլ բոլոր զօրաց, «ազատաց և անազատաց», «ամենայն տանուտեարք հանդերձ Վասակաւ երդուան միւանգամ, և կնքելով իւրաքանչիւր մատանեաւ», «ետուն ցպատուական ճպիսկոպոսն», այն է ցկաթողիկոսն, ինչպէս հաւանական է, «և ցաւագ քահանայութիւնն որ էին անդ»։ Յետ այնորիկ գացին յեկեղեցին, և յետ աղօթիցն զորոյ օրինակը կը դնէ Փարպեցին, ռամիկ զօրաց բազմութիւնն «չմնալով աւագացն հրամանի» մոլեգնաբար «դիմեցին ի տուն մոխրանոցին, և առեալ զկրակարանն վարեցին ի ջուրսն զկրակսն»... «Բայց զմօգուցն բազմութիւն, ասէ,

պահել առ օրն հրամայեցին զգուշութեամբ. և ի վաղիւն ի ծագել արևուն արս ի նոցանէ թուով սպանին սրով ի գիւղն որ կոչի Զարեհաւան»։

**20.** Յետոյ կ'իջնեն Վարդանեանք յԱյրարատ գաւառ, ուր կը լսեն, թէ Միհրներսեհ գալով ի Փայտակարան՝ կը պատրաստուէր Աղուանից կողմանէ յարձակել ի Հայս։ Վասակ կ'ստիպէ զՎարդան երթալ պատահել նոցա գնդաւ, մինչ ինքն կը մնար մնացեալ զօրօք ի Հայս։ Թէ Վասակ ուղիղ մտօք ղրկեց զՎարդան յԱղուանս, թէ հեռացուց զնա երկրէն, յուսալով թէ ի չյաջողել Վարդանայ այն պատերազմին մէջ, կը խափանուէր ապստամբութեան խորհուրդը՝ չէ յայտնի. Փարպեցին զայս ևս կը մեկնէ ձախողակի, որպէս թէ Վասակ կամակից ունենալով ինքեան աստուածանենգ իշխաններ՝ խաբէութեամբ հեռացուց զՎարդան.—«Այլ ինքն Վասակ զխաբէութեան ճանապարհն կազմեալ նիւթէր ի սրտի իւրում, ունելով կամակիցս և այլ աստուածանենգ արս խորհրդոցն իւրոց յազատացն Հայոց» (Փարպ. ԼԳ.)։

**21.** Վարդան յառաջ քան զմեկնելն յԱղուանս կ'ստիպէ զՎասակ՝ գրելով նամակ առ կայսր և առ հայ իշխանս բաժնին Յունաց՝ խնդրել օգնութիւն. և այս կատարուեցաւ իսկոյն։ Վահան Ամատունի, Հմայեակ եղբայր Վարդանայ և Մերուժան Արծրունի կը ղրկուին հանդերձ թղթովք.—«Սպարապետն Հայոց, տէրն Մամիկոնենից Վարդան ասէր ցիշխանն Սիւնեաց Վասակ, թէ որպէս անձաք զմտաւ՝ պարտ է մեզ նախ զորս տուաքեմքն առ կայսր՝ արձակել։... Եւ վաղվաղակի նամականի արարեալ առ կայսրն և առ ամենայն աւագանի դրանն Յունաց և առ այլ իշխանս և կողմնակալս, առ բդեշխն Աղձնեաց և առ իշխանն Անգեղ տան, ի Ծոփս և ի Հաշտեանս և յԵկեղեաց, և այլ իշխանաց իւրաքանչիւր տեղեաց, և առ մեծ սպարապետն Անտիոքայ (Անատոլիս)։ Եւ զայս ամենայն թղթեան կնքէր նախ ինքն իշխանն Սիւնեաց Վասակ իւրով մատանեաւ, և ապա ամենայն տանուտեարքն Հայոց։ Եւ պատրաստեալ ճանապարհին Յունաց կազմէին զիշխանն տանն Ամատունեաց Վահան, որպէս զայր մտացի և խորհրդական, և զսուրբ սեպուհն զՀմայեակ, զեղբայրն Վարդանայ ի Մամիկոնէից տոհմէն, և զերանելի Մեհրուժան, զեղբայր սրբոյն Աղանայ ի տոհմէն Արծրունեաց» (Անդ)։

**22.** Ըստ Փարպեցւոյն, ընդ որում միաբան է և Եղիշէ՝ Թէոդոս կայսր Բ. († 450) կը հաճի օգնել Հայոց. յաջորդ նորա Մարկիանոս ըստ խորհրդոյ Անատոլիոսի զօրավարին, Փլորենտեայ ուրումն ասորւոյ (ըստ Եղիշէի՝ Եգփարիոսի, զոր Գաթըրճեան կը հա-

մարի նոյն ընդ Արդաբուրիոսի, որ էր ալան ազգաւ և սպարապետ արևելից առ Մարկիանոսիւ) և այլոց աւագաց՝ կը մերժէ խնդիրը, և պատգամաւորք կը դառնան ունայն։ Եթէ պարտ է հաւատալ Եղիշէի՝ զնոյն Եղփարիոս զրկեց Մարկիանոս առ Յազկերտ իմացուցանել, թէ ձեռնթափ էր ի Հայոց։ Զիարդ և իցէ՝ «պատգամաւորքն երթեալք յանդիման եղեն թագաւորին Թէոդոսի. որոյ լուեալ զպատճառ նոցա երթիցն՝ սիրով լսէր ի նոցանէ և յանձն առնոյր օգնել նոցա գնդիւ։ Եւ մինչդեռ պատրաստէր զիրս խոստմանն՝ հասեալ վախճան սրբոյն վճարէր ի կենցաղոյս։ Եւ թագաւորէ փոխանակ նորա Մարկիանոս, որոյ և տեղեկացեալ զպէտս խնդրոյն իրացն Հայոց՝ հարցանէր զաւագս դրանն, թէ Որպիսի՞ թուի ձեզ պատասխանի առնել արանցդ եկելոց յաշխարհէն Հայոց։ Պատասխանի տուեալ Անատոլեայ, որ ի ժամուն սպարապետ էր Անտիոքայ, և Փլորենտի ուրումն առն, ասորի ազգաւ, որ էր աւագ դրանն թագաւորին, և ասեն. Մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ և զհաստատութիւն, զոր ի բազում ժամանակաց գրեալ և կնքեալ է առաջին թագաւորացն, գրգռել պատերազմաւ իրս մի խաղաղացեալս, և ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ թագաւորին քիւրեանց։ Այլ և զերս անյայտ իրացդ պարտ է ածել զմտաւ, զոր ոչ ոք կարէ գիտել, թէ որպէս, դիւրեաւ և կամ սաստիկ պղտորմամբ պատերազմդ եղեալ վճարեսցի։ Եւ զայս այսպէս ասացեալ՝ կասեցուցին զմիտս թագաւորին, և վնասեցաւ ակնկալութիւնն Հայոց որում ուշ եղեալ մնային, և ոչ պատահեցաւ։ Եւ մինչդեռ յապաղեալ էր զրոյց պատասխանւոյն այսպէս՝ հասեալ գործ պատերազմին Հայոց և Պարսից կատարէր» (Փարպ. ԽԱ)։

**23.** Յետ մեկնելոյ պատգամաւորացն ի Յոյնս՝ Վարդան հանդերձ երևելի նախարարօք և բազմութեամբ զօրաց երթալով յԱզուանս՝ կը կատարեն յաղթութիւն մեծ, զոր մանր կը նկարագրէ Փարպեցին.—«Եւ սպարապետն Հայոց տէրն Մամիկոնէից երանելին Վարդան առեալ ընդ իւր ի տանուտերացն Հայոց որ ջերմեռանդ սիրով ճեպէին մարտիրոսութեան ժամուն պատահել, որք էին այսոքիկ. Խորէն Խոռխոռունի, Արշաւիր Կամսարական, և Թաթուլ Դիմաքսեան, և Արտակ Պալունի, և Գիւտն Վահևունեաց, և Հմայեակ Դիմաքսեան, և այլ տանուտեարք և սեպուհք, և բազումք ի զօրացն Հայոց, որք ինքնայօժար փութով փափաքէին լինել վրէժխնդիր ուխտի սուրբ եկեղեցւոյ, և տալ զանձինս ի մահ ի վերայ սուրբ ճշմարիտ հաւատոյն Քրիստոսի. և այլ գունդք ի զօրացն Մարդպետական այրուձիոյ, փոյթք ի գործ պատերազմին առաքինութեան։... Եւ հասեալ յԱղուանս երանելւոյ զօրավարին Հայոց

Վարդանայ՝ ազդ եղև զօրագլխացն Պարսից եկն Հայոց։ Եւ լուեալ նոցա փութային անցանել ընդ գետն մեծ զոր Կուր գետն կոչեն, և ընդ առաջ եկին նոցա մինչև ի գիւղն որ կոչի Խաղխաղ, յերկրին Աղուանից։... Եւ հասեալք ի ժամ մարտին՝ հայեցեալ տեսանէին ըստ օրինի կարգման զգունդն Պարսից։ Կարգէր և զիւր գունդն երանելի զօրավարն Հայոց Վարդան, ըստ բաւականին այրուձիոյն իւրոյ ընդդէմ նոցա. յերիս առաջս բաժանեալ՝ տայր ի ձեռս իւրաքանչիւր զօրագլխի։ Աջոյ կողմանն կացուցանէր զօրագլուխ զիշխանն Արշարունեաց զԱրշաւիր Կամսարականն, որ էր և փեսայ զօրավարին Հայոց սրբոյն Վարդանայ, ունելով զդուստր նորա ի կնութեան. և նիզակակից տայր նմա զՄուշ զաւագ սեպուհն յազգէն Դիմաքսենից. և զահեակ կողմն տայր ի ձեռն Խորենայ Խոռխոռունւոյ, և զօրավիգն ընդ նմա կացուցանէր զՀմայեակ Դիմաքսեանն. և ինքն սուրբ զօրավարն Հայոց Վարդան պատրաստէր զինքն միջոյ տեղւոյն յարձակման։ Եւ այսպէս յօրինեալ զճակատն և յԱստուծոյ խնամսն ապաւինեալք՝ յարձակեցան ի վերայ թշնամեացն։ Կանխագոյն յառաջեալ ի տեղի մարտին Կամսարականն Արշաւիր և Մուշ սեպուհն Դիմաքսենից, որք յանդիմանութենէ տեղեացն դիպեցան թանձրախոր սաստիկ մօրից. Կամսարականն Արշաւիր և Մուշ յառաւելապէս դիմեցմանէն երիվարացն անկեալք ի տիղմն հանդերձ երիվարօքն խրէին. անդ կատարեալ պսակէր երանելի սեպուհն Դիմաքսենից Մուշն։ Իսկ Կամսարականն Արշաւիր իջեալ յերիվարէն ի հետիոտս՝ սպանանէր զՎուրկն, զեղբայր թագաւորին Լփնաց, և ի բաց ձգեալ զերիվարն ի սաստիկ խոր տղմոյն, ուր և մոյկ մի զերծեալ յոտանէն՝ թողեալ մնայր անդէն ի մօրին. և ինքն Կամսարականն միամոյկ տղմաթաթաւ հանդերձ ամենայն զինուն հանեալ զերիվարն ի ցամաք՝ անվեհեր քաջաբար նման թռչնոյ յերիվարն հեծանէր, և զարհուրեցուցեալ զթև իւրոյ կողման թշնամեացն՝ փախստական առնէր։ Եւ հայեցեալ տեսանէր զերանելի սպարապետն Հայոց զտէրն Մամիկոնէից Վարդան հանդերձ ընկերակցօքն իւրովք և ամենայն Հայոց գնդաւն, զի արարեալ փախստական և նոցա ածէին առաջի իւրեանց զբազմութիւն զօրացն Պարսից. յորոց զկէսն սրովք իւրեանց դիաթաւալս յերկիր կործանէին, և զկէսն զետավէժս արարեալ հեղձամղձուկ առնէին. զայլսն ի նոցանէ դաշտացն և անտառախիտ մայրեացն ցրուեալս վատնէին։ Իսկ ոմանք յաւագորերոյ Պարսիցն ելեալք ի նաւս՝ յայնկոյս գետոյն մեծի փախըստեալք լինել ճեպէին։ ԶԿամսարականն Արշաւիր զիշխանն Արշարունեաց տեսլով փութացուցանէր երանելի զօրավարն Հայոց Վարդան՝ զկնի փախստէից նաւացն նետաձիգ լինել, ի հաստաձգութիւն և

յանվրէպ դիպողութիւն առնն վտանգեալ։ Իսկ Կամսարականն Արշաւիր, որպէս և միշտ կամակատար էր բանի սրբոյ զօրավարին, վաղվաղակի հաւանեալ առ ի նմանէ հրամանին՝ զկնի նաւավարացն և փախստէիցն նետաձիգ լինէր։ Եւ խոցեալ զնաւավարսն և զայլս բազումս ի նաւսն՝ կարեվէրս առնէր, որոց ընդ տապալել վիրաւորացն կործանէին նաւքն. և բազումք ի նաւավարացն և գլխաւորացն Պարսից գետասոյզ եղեալ կորնչէին։ Եւ այսպէս շնորհեալ նոցա յաղթութիւն վերին օգնութեանն՝ դառնային ի բանակս իւրեանց։ Եւ դադարեալք անդէն ի տեղւոջն զօրն զայն՝ ի վաղիւն չուեալք անցանէին ընդ գետն մեծ, անուանեալն Կուր գետ, հասանէին ի պահակ որմոյն, որ է ընդ մէջ իշխանութեանն Աղուանից և Հոնաց. և գտեալ անդ զպահապանս պահակին և այլ զօրականս պարսիկս բազումս, յորոց սուր ի վերայ եդեալ կոտորէին, և զպահակն յանձն առնէին թագաւորազնի միում աղուանի, որում անուն էր Վահան. և զնոյն արձակէին դեսպան ի Հոնս և առ այլ ամբականս տեղեացն, զորս հաւանեցուցանէ միաբանել նոցա գնդաւ. որոց կամաւ և յօժարութեամբ զօգնելն յանձն առեալ հաստատէին երդմամբք։

**24**. Այն ինչ վճարած էր պատերազմն յԱղուանս՝ գուժկան հասաւ, թէ Վասակ և միւս նախարարք որ մնացած էին ի Հայս՝ դառնալով միացան ընդ Պարսից, բռնեցին ամուր տեղեր, և ըդտղայս Մամիկոնենից և Կամսարականաց ղրկեցին պատանդ առ թագաւորն.—«Մինչդեռ այս ամենայն կատարէր այսպէս՝ յանկարծակի դեսպան հասանէր առ երանելի զօրավարն Հայոց Վարդան և առ ամենայն գունդն որ ընդ նմա էին, թէ ստեաց Վասակ ուխտին Աստուծոյ և յետս կացեալ ապստամբեաց ի միաբանութենէ ճշմարտութեանն. նոյնպէս մնացեալքն անդէն առ նմա աւագանին Հայոց... դեսպան արձակեցին ի Պարսս և նամակօք ուխտադրեցին ընդ նոսա, և զբերդեան ամրոցացն Հայոց ի բաց կալան, և զիւրեանցն բերդակալս արարեալ՝ զգուշացուցին։ Եւ զորդիս տոհմին Մամիկոնէից և Կամսարականաց և զայլոց տանուտերացն ժողովեալ յիւրաքանչիւր գայեկաց՝ յամուրս բերդից իշխանութեանն Սիւնեաց ետ անցուցանել, և հրամայեաց պահել զամուրսն զգուշութեամբ, և ապա տալ տանել զտղայսն առ թագաւորն Պարսից։ Եւ որք խոտորեցան զկնի ուխտանենգին Վասակայ՝ են այսոքիկ. իշխանն Բագրատունեաց Տիրոց, իշխանն Խորխոռունեաց Գադիշոյ, իշխանն Ապահունեաց Մանէճ, իշխանն Վահևունեաց Գիւտ, իշխանն Պալունեաց Վարազշապուհն, իշխանն Աբեղենից Արտէն, իշխանն Ուրծայ Ներսեհ, և այլք յուսանկաց և սեպուհք ոմանք յիւրաքանչիւր

տոհմէ» (Փարպ. ԼԶ.)։ Վարդան և իւրքն առնելով զայս լուր՝ կ'աճապարեն դառնալ ի Հայս.—«Լուեալ զայս ամենայն երանելւոյ սպարապետին Հայոց տեառն Մամիկոնէից Վարդանայ հանդերձ նախարարօքն և զօրուն որ ընդ նմայն էին՝... չուեցին միաբան ամենեքեան յաշխարհէն Աղուանից յերկիրն Հայոց ի գաւառն Այրարատայ, և անդ զաւուրս դառնաշաւինչ օդոյ ձմերայնոյն ըստ սովորութեան իւրեանց դադարեալք՝ փութային առ հասարակ անձկով զաւուրս գարնանայնին ամսոյն տեսանել, և յօր իւրեանց նահատակութեան պսակին հասանել։ Քանզի ոչ ևս ինչ այլ ինչ անձեր զմտաւ ոք զյաղթութիւն և կամ զպարտումն, այլ ցանկացեալ էին որպէս ծարաւիք բաժակին փրկութեան՝ իւրեանց կատարմանն պատահել» (Անդ)։

**25.** Միւս կողմանէ Վասակ նամակներ և քահանաներ հանելով կը յորդորէր ժողովուրդը՝ չանսալ Վարդանայ, այլ յետ կենալ ապստամբութենէ, խոստանալով թէ թագաւորն պատրաստ էր շնորհել ազատութիւն պաշտելոյ գքրիստոնէութիւն, ներել մոգերուն կոտորածը և ուրիշ վնասներ. իսկ զապստամբութիւնն ամենևին չյիշել. —«Իսկ Վասակ ոչ երբէք դադարէր գրել նամականի առ իշխանս և շինականս և քահանայս աշխարհիս Հայոց. ցուցանէր իմն բերեալս ի դրանէ ուխտս սուտս և վկայութիւնս ընդունայնս, թէ արքայից արքայ գքրիստոնէութիւն շնորհեաց աշխարհին, և զվնաս կոտորածի մոգուցն չխնդրէ, իսկ զապստամբութենէն ասէ, թէ բնաւ և յիշեմ իսկ ոչ, միայն թէ ի բաց դառնայք ի խորհրդոյ և ի բանից Վարդանայ և մի կորնչիք ընդ դմա։ Եւ զինքենէ գրէր, թէ Ես լինիմ միջնորդ այսմ ամենայնի և անվնաս պահեմ զաշխարհս Հայոց։ Եւ տուեալ զգրեալս ի ձեռս սուտ քահանայից, որոց անուանքն են Զանգակ մի ոմն, Սահակ Զայնող և միւս ոմն Պետրոս Երկաթի։ Եւ էին Սահակն և Պետրոսն ի գաւառէն Սիւնեաց, յորոց ձեռս տայր զգրեալսն շրջեցուցաննել ընդ աշխարհս Հայոց. զոր լուեալ թուլացելոցն ի հաւատս և անյուսիցն՝ հաւատացեալ բանից նենգաւորին կորնչէին. իսկ պինդքն և մարտիրոսութեան տենչողքն երբև լսէին զայս ամենայն բանս ցնորից՝ ևս առաւել պնդեալ զօրանային և աւուր աւետաբեր փրկութեանց սպասէին յուսով» (Անդ)։ Ըստ Փարպեցւոյն՝ թողութեան հրովարտակներն, զորս կը տարածէր Վասակ յետս կասեցուցանելու համար զազգն ապստամբութենէն՝ էին սուտ, և Վասակ կը գործէր զայս ամենայն նենգութեամբ և դաւով։ Չիք տարակոյս, թէ ազգին այն մասը որ միտեալ էր յապստամբութիւնն, կամ մանաւանդ «մարտիրոսութեան տենչօղք» ըստ Փարպեցւոյն՝ Վասակայ ջանքը կը մեկնէին թիւր և չէին վստահ ի

նա իբրև յուրացեալ։ Բայց թէ արդարև այնպէս էր, Վասակ սուտ հրովարտակներ հանեց յանուն Թագաւորին, և նպատակն էր սատագիւ խաբել նենգութեամբ, թէ ընդ հակառակն ազգասէր խնամով վերջին հնարքն ի գործ արկ ազատել զազգն մոլեռանդ երկիւղէն և խափանել պատերազմին և պարտութեան, որ անհրաժեշտ էր՝ չարաչար հետևանքը։ Այս վերջինն հաւանականագոյն է ըստ մեզ քան առաջինը։ Ո՛րչափ ցաւալի է անխորհուրդ կրօնասիրութեան կուրութիւնը։

**26.** Զիարդ և իցէ՝ ջանք Վասակայ և իւրոցն օգտեցին գրեթէ ոչինչ։ Մարտիրոսութեան տենչը զօրաւոր էր ուխտապահ կոչուած մասին մէջ, մանաւանդ որ կղերին մեծ և երևելի մասն էր քաջալերիչ և խրատտու։ Ուստի Յազկերտ որոշեց զինու զօրութեամբ նուաճել զապստամբութիւնն։ Զօրքն Պարսից կը հասնէին ի Հեր և ի Զարևանդ, արևելեան հարաւային նահանգ Հայոց, սահմանագլուխ Պարսից։ Առանձար անուն սեպուհ մի կը ղրկուի Վարդանանց կողմանէ լրտեսել պարսկական գունդը, և փոքր յաղթութիւն մի ևս կը կատարուի Պարսից վերջապահ թևին վրայ։ Առանձար կը դառնայ իւր գնդով և կու տայ տեղեկութիւն պարսիկ գնդին և մանաւանդ զօրագլուխներուն վրայ։ Վարդանանք կը փութան երթալ ընդ առաջ Պարսից և չտալ նոցա մուտ ի ներքին Հայս. բայց Պարսիկք աճապարելով կը հասնին յԱրտազ գաւառ Այրարատայ, ուր մօտ էր բանակն Վարդանայ.—«Եւ կատարեալ զաւուրս ձմերային ցրտաշունչ օդոյն, և հասեալ ի տօն մեծ զատկին՝... լուան եթէ զօր եհաս բազում ի Հեր և ի Զարևանդ գաւառ։... Առաքէր երանելի սպարապետն Հայոց Վարդան միաբանութեամբ աւագանւոյն որ ընդ նմա էին՝ սեպուհ մի յազգէն Ամատունեաց որում անուն էր Առանձար, իբրև երեքհարիւր հեծելովք, երթալ լրտեսել զբազմութիւն զօրացն Պարսից, և տալ գրգիռս եթէ հնար իցէ, առ ի փութապէս, ասէ, գալ բերել մեզ զպսակս արքայութեան, զոր ի ձեռն նոցա պարգևէ մեզ Փրկիչն Քրիստոս, յաւիտենից բարութեանցն տուիչ։ Երթեալ Առանձար և գունդն որ ընդ նմա՝ տեսին զբանակն Պարսից, և զհզօր վերջապահ թևով միով անկեալ՝ զբազումս հանէին ընդ սուր, և զայլս փախստական արկանէին ի զօրսն Պարսից. և ինքեանք դարձեալ ողջանդամ հասանէին ի գունդն Հայոց, և պատմէին նոցա զԱստուծոյ զօրութիւնն զոր յաջողեաց նոցա Փրկիչն։ Պատմէին և վասն զօրագլխացն, թէ Մուշկան Նիւսալաւուրտ և Դողվրճն են. տային գիտել և զայս ևս, թէ կամէին սթափութեամբ հասանել ի միջոյ կողմն աշխարհիս։ Զոր լուեալ երանելւոյ սպարապետին Հայոց և որոց ընդ նմայն

էին՝ և ևս առաւել ճեպէին երթալ ընդդէմ նոցա. Նախ՝ վասն վաղվաղակի պատահելոյ նոցա ժամու մարտիրոսութեան, քանզի անձանձրոյթ աղօթէին հանապազ ի տուէ և ի գիշերի՝ լինել արժանի այնպիսի մասին երկնաւորի. և երկրորդ՝ ասէին, թերևս անդէն ի տեղւոջն ի Հեր և ի Զարևանդ գաւառին վճարին ելք գործոյն պատերազմին, և լինէր արգել զօրուն Պարսից հասանել յաշխարհն Հայոց սպանութեամբ և գերելով յարձակել և վնասել: Եւ սոցա թէպէտև ածեալ զայնպիսի ինչ զմտաւ կամէին փութալ՝ սակայն ևս առաւել ստիպով եկեալ հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ, հուպ ի գեւղն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի մի Տղմուտ դաշտին, զոր ընտրեցին յաղագս երկիւղի զօրացն Հայոց. ամուր ապաստանի անձանց համարէին պատշաճ, և ի մէջի նորա ածեալ ղակիշ՝ բանակէին» (Փարպ. ԼԵ.):

Պենտեկոստէի ուրբաթ օրն Հայոց զօրքը եկան այն տեղ, ուր էր բանակն Պարսից, զոր անպատրաստ գտնելով՝ կրնային յարձակել հարկանել. բայց թոյլ տուին. քանզի, կը կրկնէ Փարպեցին, դիտաւորութիւն նոցա ոչ յաղթել էր, այլ հասանել մարտիրոսութեան: Արդարև զարմանք. մարտիրոսութեան հասնելու, այսինքն յաղթուելու և մեռնելու նպատակաւ՝ պատերազմ յարուցանել, և կամաւ կորուսանել թշնամին ընկճելու պատեհութիւնը նոյն նպատակին համար.—«Իսկ յաւուր ուրբաթու մեծի տօնին պենտեկոստէին դիմեալ հասանէին մերձ ի նոյն տեղիս զօրքն Հայոց. գտեալ անպատրաստագոյն զզօրսն Պարսից՝ թէ կամէին կարող էին վնասել երամակարձակ ծուլացելոցն. բայց թոյլ տուեալ դադարեցին յայնմ աւուր: Քանզի ոչ էր եդեալ ի մտի նահատակութեան փափաքողաց այնուհետև յաղթել, այլ միշտ և հանապազ ի կէտ կոչման և տենչալի մարտիրոսութեանն փութային հասանել: Եւ ժողովեալք այնուհետև՝ մօտ առ զօրսն Պարսից բանակէին, մինչ սահմանն ընթացից տուընջեանն կատարէր» (Փարպ. ԼԸ.): Կղերէն բազումք հանդերձ կաթողիկոսաւ որ էին ի բանակին՝ բոլոր գիշերն անցուցին սաղմոսերգութեամբ, և քաջալերելով զզօրսն հոգևոր խրատներով, մանաւանդ Ղևոնդ երէց, այր արդարև բանիբուն և հմուտ գրոց սրբոց.—«Եւ հասեալք ի ժամ երեկոյին... զցայգն ամենայն դասք քահանայիցն մերթ սաղմոսարանին գործոյիւք, մերթ վարդապետական բանիւք քաջալերէին զբազմութիւն զօրացն՝ վայր մի քաջանալ և անսպառ բարեացն լինել ժառանգաւոր: Իսկ սուրբ երէցն Յովսէփ, որ և զկաթողիկոսութեանն ունէր զաթոռ, հրաման տայր երանելոյ առն Աստուծոյ Ղևոնդի խրատել զժողովուրդն և քաջալերել: Եւ սուրբ երէցն Ղևոնդ զամենայն զգիշերն անձան-

ձրոյթ առաքելական վարդապետութեամբ զօրացուցեալ ուսուցանէր զամենեսեան յորդաբուղխ իմաստութեամբ» (Անդ)։ Առաւօտուն կանուխ ճակատեցան երկուստեք, և սկսաւ պատերազմն, զոր այսպէս կը նկարագրէ Փարպեցին. «Վասն զի մերձեալ էր այնուհետև ժամ ելից արեգական, և գունդն Պարսից ճակատել ի պատերազմն պատրաստէին և վառէին։ Եւ սուրբն Վարդան տէրն Մամիկոնէից բաժանեալ զիւր գունդն յերիս առաջս՝ միջոցի գնդին կարգէր գլխաւոր զտէրն Արծրունեաց և զմարդպետն Միհրշապուհ, հանդերձ իշխանաւն Արշարունեաց Արշաւրաւ և երանելի արամբն Արտակաւ իշխանաւն Մոկաց և այլ աւագ նախարարօքն. և կողմանն աջոյ կարգէր աւագ զերանելին Մախազ Խորէն, հանդերձ երանելեաւն Թաթուլաւ արամբն Վանանդայ և սուրբ արամբն Ներսեհիւ Քաջբերունւով և այլ աւագ նախարարօք. և ընդ ահեկէն կողմանէ պատրաստէր զինքն իւրով գնդովն և իշխանաւն Առաւեղենից Փափագաւ և այլ իշխան նախարարօքն Հայոց. քանզի յայնմ կողմանէ առաւելապէս երևէր զակիշ գնդին սևնի զօրուն և այլ զօրաւորարանց նշանք դրօշիցն։ Եւ զՀամազասպեան զիւր եղբայրն թողոյր վերջապահ, և պատուիրէր նմա՝ մի՛ զօք բռնադատել, այլ յորդորել միայն բանիւք յազագս իւրեանց փրկութեան։ Եւ այսպէս բաժանեալ յերիս առաջս զզօրսն Հայոց սուրբն Վարդանայ, և օրհնեալք ի բերանոյ սուրբն քահանայիցն՝ յարձակէին ի վերայ միմեանց երկոքին կողմանքն, Հայոց և Պարսից։ Եւ ելեալս արարեալ այնուհետև՝ յառաջէին որք ցանկացօղք մարտիրոսութեան պսակին, և զզօրսն Պարսից ի փախուստ դարձուցանէին զառաջինն։ Իսկ այլ բազմութիւն զօրացն Հայոց, որք առ հարկի և ոչ կամաւ եկեալ էին, մանաւանդ զի և յօժարք էին զայլս դարձուցանելոյ յետս որք երկնից բարութեանցն ցանկացեալք էին՝ անդէն ի փախուստ դարձեալ կորնչէին զյաւիտենից կորուստն։ Եւ տեսեալ զօրացն Պարսից զգունդն Հայոց լքեալս և պարտասեալս առ ի կոտորել զազգն իւրեանց, հայեցեալ և յայն ևս, զի փախուցեալ երթային զօրքն Հայոց՝ ի մէջ առեալ շուրջ զնոքօք պատեալ ծովանային։ Ստիպելով այնուհետև զհետ փախստէիցն Հայոց անցանէին զօրքն Պարսից. որոց հասեալ զոմանս կոտորէին, և զայլ ոմանս արգելեալ ի տեղի ինչ ամրոց արգելուին. որոց ոմանք հատեալ զնիզակափակ գիշերոյն պահապանացն, և զբազումս ի նոցանէ կոտորեալ՝ գնացին ողջանդամք։ Եւ այգուն ի փախստէիցն Հայոց ձերբակալ արարեալ ածին ի բանակն և կոտորեցին սրով, և զայլս բազումս արկեալ զփղօք սպանանէին. և մնացորդք փախստէիցն յայլևայլ տեղիս Հայաստան աշխարհիս ցրուեցան։ Բայց որք ի ժամուն երանելի և եր-

կնաւոր կոչմանն եղեն արժանաւորք ընդ սրբոյն Վարդանայ և նահատակեցան՝ են այսոքիկ. յազգէն Խորխոռունեաց երանելին Խորէն. յազգէն Պալունեաց երանելի սպուհն Արտակ. յազգէն Գնթունեաց երանելին Տաճատ. յազգէն Դիմաքսենից երանելին Հմայեակ. յազգէն Քաջբերունեաց երանելին Ներսէհ. յազգէն Գնունեաց երանելին Վահան. յազգէն Ընծայնւոյ երանելին Արսէն. յազգէն Սրուանձտայ երանելին Գարեգին։ Եւ որպէս շատ խուզեւ և բազում քննութեամբ հարցեալ և ուսաք զնահատակացն թիւս, որք ի տեղւոջ պատերազմին պսակեցան ընդ աւագ նախարարսն՝ էին երկերիւր եօթանասուն և վեց այր։ Եւ զորս յամրոցացն իջուցեալ սպանին սրով և կամ փղօք կոխեցին՝ եօթնհարիւր և յիսուն այր, որք լինին միահամաւ՝ հազար երեսուն և վեց այր։ Իսկ ի զօրացն Պարսից որք անկան ի պատերազմին յաւուրն յայնմիկ, և զոր ստուգիւ համարեալ պատմեցին մեզ տեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից՝ երեք հազար հինգ հարիւր քառասուն և չորս այր» (Փարպ. ԼԹ.)։

**27.** Փարպեցին պարզութեամբ կը պատմէ, թէ ինչպէս ի սկզբան զօրացան Հայք, բայց զօրաց այն մասն որ ակամայ եկած էին՝ դարձան ի փախուստ. զայս տեսնելով Պարսիկք՝ յարձակեցան պնդութեամբ, և յաղթուեցան Հայք։ Առ Եղիշէի չիք այսպիսի խոստովանութիւն, այլ երկու կողմն ևս կը մրցին քաջութեամբ, մինչև մահուամբն Վարդանայ կը ցրուի զօրն.—«Ոչ թէ կողմ էր որ յաղթեաց, և կողմ էր որ պարտեցաւ, այլ քաջք ընդ քաջս ելեալ՝ երկոքին կողմանքն ի պարտութիւն մատնեցան։ Բայց քանզի անկեալ էր զօրավարն Հայոց ի մեծ պատերազմին՝ ոչ ոք գոյր առնուհետև ի մէջ գլխաւոր, յոր լցեալ ժողովէին զունդն մնացելոցն» (Եղիշ. էջ 209)։ Բայց ճշդագոյն է Փարպեցին։

Արդարև Հայոց այս պարտութեան պատճառն էր սակաւութիւն նոցա և զօրաց մեծ մասին ցրտութիւնը, որք եկած էին ակամայ, նա մանաւանդ, որպէս ասէ Փարպեցին՝ «զայլս յերկուացուցանելոյ և յետս դարձուցանելոյ» նպատակաւ։ Մեծ յարգութեամբ հանդերձ, զոր ունինք առ Վարդանեանս, իբրև արդարև վկայս՝ պարտիմք խոստովանել, թէ չէր բնաւ իմաստութիւն միով մասամբ միայն ազգին, ամենևին զուրկ արտաքին օգնութենէ՝ խիզախել Սասանեան պէս խրոխտ զօրութեան դէմ, զոր հռոմէական պետութիւնն անգամ չիշխեց գրգռել։ Սոյն այս կէտն է որ կ'արդարացունէ հակառակ կողմը։ Եթէ Վասակ, որ արդէն հակառակ էր ապստամբութեան խորհրդոյն, տեսնելով ևս Յունաց և գրեթէ բոլոր քրիստոնեայ աշխարհին հրաժարելն օգնելէ Հայոց, և իբրև

ապստամբութիւն՝ աղարտելն Հայոց շարժումը, բաժնուեցաւ երեւելի մասով մը միաբանութենէն, ինչպէս կը ցուցնէ Փարպեցին, այս դիպաց հաւատարմագոյն պատմիչը՝ չէր ամենևին դատապարտելի. մանաւանդ որ Վասակ ամէն ջան ի գործ դրաւ, իբրև միջնորդ ի կողմանէ Թագաւորին՝ յետս կացուցանել զազգն ապստամբութենէն, Թէպէտ ամէն ջան Վասակայ մեկնուեցաւ իբրև խաբէութիւն։ Եթէ ընդունինք, թէ Վարդան, իբրև նախանձաւոր քրիստոնեայ, ունէր պատճառ ընտրելու անյոյս պատերազմ մը, տեսնելով հաւատոյ աչօք մարտիրոսութեան պսակ՝ պարտինք ընդունել, թէ Վասակ, իբրև իմաստուն քաղաքագէտ՝ ունէր գոնէ նոյնչափ պատճառ ջանալու խափանել այն պատերազմն, իբրև յանդուգն ձեռնարկութիւն։ Կուսակցութեան կամ չափազանց եռանդեան ոգւով գրուած պատմութեան բոլոր վճիռներն կ'ունայնանան խոհեմութեան կանոնին առջև։ Հալածանաց դէմ բարոյական զէնքն է օրինաւոր. բայց երբ հարկը կ'ստիպէ բռնութիւնը բռնութեամբ վանել՝ խոհեմութեան կանոնը կը մտնէ մէջ։ «Ո՞ր թագաւոր երթեալ տայցէ պատերազմ ընդ այլում թագաւորի, և ոչ նստեալ նախ խորհիցի, եթէ կարո՞ղ իցէ տասն հազարաւ ընդդէմ ունել զայնորիկ որ գայցէ ի վերայ նորա քսան հազարաւ. ապա թէ ոչ՝ մինչդեռ հեռագոյն իցէ, հրեշտակութիւն առաքեալ աղաչեսցէ ի խաղաղութիւն» (Ղուկ. ԺԴ. 32)։ Մեր գանգատը չէ այն դիւցազն խմբին դէմ, որ իբրև բոյլ մի՝ համարուած է և պիտի համարուի միշտ հայ երկնին զարդ, այլ է այն միականիներուն դէմ, որ մի կողման եռանդը գիտելով մանր՝ չեն նայիր անգամ միւսոյ կողման իմաստութեան։ Վարդանանց պատմութիւնն է ըստ մեզ երկու կուսակցութեանց պատմութիւն. մին հոգևոր, աստուածային, որ զերկնաւորն միայն ունի ինքեան նպատակ (Թէպէտ ոչ առանց գոնէ ծածուկ ինչ քաղաքական գիտման՝ ազատելու պարսկական բռնութենէն, ընդ որով ինկած էին նախարարք մեր, հակառակ խրատուն երկուց իմաստուն հայրապետաց, Ներսիսի և Սահակայ). միւսըն՝ մարմնաւոր և աշխարհական, որ ըստ մարդկային մթնոլորտն անդր չանցնիր։ Որովհետև ազգին վստահութիւնը գրաւող երկու պատմիչք, Փարպեցին և Եղիշէ, մանաւանդ վերջինն, ի բս[…]րացուցանելն զմին, զմիւսն կ'իջեցունեն չարաչար՝ անիրաւ դատում մը տրուած է յազգին ընդդէմ Վասակայ։ Մեր ջանքն եղաւ այս պատմութեան մէջ ուղիղ դատման առաջնորդել մեր ընթերցողները, բուն լուսով իւրեանց ցուցնելով երկու կողմը։

**28.** Մինչև ցարդ պատմեցինք կարգաւ, առնլով ի Փարպեցւոյն, ինչ անցք որ անցան ի Հայս յետ դարձին նախարարաց Յազ-

կերտէ հանդերձ մօգօք, մինչև այն օրհասական ժամն, յորում այնչափ քաջեր անկան զոհ ջերմ եռանդեան, որ թէև գիւցազնական՝ ունէր, անաչառ խօսելով, մեղադրելի կողմեր։ Այս, այսինքն Փարպեցւոյն պատմութեան մէջ, ինչպէս կը տեսնուի՝ Վասակ է միաբան ընդ այլ նախարարս, ընդ Վարդանայ անգամ. կը տրտմի նոցա մեկնելուն վրայ, կը դարձունէ զնա յետս նամակօք ի ձեռն պատգամաւորաց. չունի ուրոյն և գաղտնի միաբանութիւն ընդ մոգպետին, թէպէտ չթուիր կամակից ապստամբութեան խորհրդոյն, որում մանաւանդ անտեղեակ էր, և ակամայ կը միաբանի յայն՝ երբ կը յայտնուի նմա խորհուրդն։ Ի մեկնելն Վարդանայ յԱղուանս՝ Վասակ է տակաւին միաբան ընդ Վարդանայ, մինչև յղել նամակ առ կայսր և առ հայ իշխանս բաժնին Յունաց օգնութեան համար ըստ խնդրոյ Վարդանայ։ Վասակայ դառնալն հանդերձ համամիտ նախարարօք, «որք էին երևելագոյնք» ըստ Փարպեցւոյն, կազմել ուրոյն կուսակցութիւն հակառակ ապստամբութեան՝ եղաւ յետ մեկնելոյն Վարդանայ յԱղուանս, երբ Վասակ և իւրքն տեսան, թէ չկար նոցա օգնութիւն ո՛չ կայսերէ և ոչ այլուստ։ Վարդան և իւրքն առնլով Վասակեանց բաժնուելուն լուրն՝ իսկոյն դարձան ի Հայս, և հակառակ ջանից Վասակայ խափանելու ապստամբութիւնը՝ կատարեցաւ պատերազմն։

**29.** Այս ամենուն մէջ գործող, ըստ Փարպեցւոյն, են նախարարք։ Եղիշէ ընդ հակառակն ամէն գործ կ'ընծայէ եպիսկոպոսաց։ Այնպէս որ ըստ Եղիշէի՝ Վարդանանց պատերազմն է կղերական պատերազմ, ըստ Փարպեցւոյն՝ ազգային, թէպէտ ոչ ազատ կղերական ազդեցութենէ։ Ըստ Եղիշէի, ինչպէս արդէն յիշուեցաւ, երբ նախարարաց ուրացութեան լուրը կը հասնի ի Հայս՝ եպիսկոպոսունք կը ցրուին իսկոյն ի գաւառս գաւառս և կը գրգռեն զժողովուրդն յապստամբութիւն։ Այր և կին կը դնեն ուխտ՝ չխնայել իւրեանց սիրելիներուն. ամենքին կը վառին զինու իբրև զինուոր. —«Յայնմ ժամանակի (ի հասանել գուժի ուրացութեան նախարարաց) սփռեցան եպիսկոպոսքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, և առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեւղս և յագարակս և ի բազում ամուրս լեռնային գաւառացն։ Դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց և կանանց, շինականաց և ազատաց, զքահանայից և զմենակեցաց. խրատ ետուն, պնդեցին և արարին զամենեսեան զինուորս Քրիստոսի։ Եւ յառաջին բան խորհրդին այս հաստատեցաւ. Ձեռն եղբօր հարազատի ի մերձաւոր իւր լիցի՝ որ անցեալ իցէ ըստ ուխտ պատուիրանին Աստուծոյ. և մի՛ խնայեսցէ հայր յորդի, և մի՛ ակն առնուցու որդի հօր պատուոյն։ Կին կռուեսցի ընդ առն ամուսնոյ,

և ծառայ դարձցի ընդդէմ տեառն իւրոյ։... Եւ եթէ այս այսպէս հաստատեցաւ կազմեցաւ՝ երևեցան ամենեքեան զինեալք և սաղաւարտեալք, սուր ընդ մէջ և վահան ի ձեռին, ոչ միայն արանց քաջաց, այլև կանանց առնականաց» (Եղիշ. էջ 97, 98)։ Այսպիսի մոլեռանդութեան յիշատակ չկայ առ Փարպեցւոյն։ Ըստ Փարպեցւոյն՝ ժողովուրդը կ'զգայ մեծ ցաւ ի գալ նախարարացն մոգերով հանդերձ։ Այնպէս սրտառուչ է տեսիլը՝ մինչև Վարդան չհանդուրժելով կը մեկնի իւրովքն երթալ ի Յոյնս, թէպէտ յետոյ կը դառնայ, կոչուելով յետս ի Վասակայ, ինչպէս տեսանք։ Եղիշէ չգիտեր, կամ մանաւանդ չյիշեր զայս։ Ըստ Եղիշէի՝ յետ դարձին նախարարաց Տիզբոնէ երբև քսան և հինգ օր յետոյ՝ մոգպետը կը փորձէ քակել եկեղեցւոյն դռները, բայց Ղևոնդ երէց կ'ընդդիմանայ մեծ զօրութեամբ։ Բազմութիւնը կը յարձակի քարերով և կը հասցունէ անհնարին տագնապ մոգերուն և մոգպետին, որ կ'աղաչէ թողուլ զնա ողջ.—«Եւ եղև յետ աւուրց քսան և հնգից (դարձին Նախարարաց) մոգպետն ինքնին հասանէր մեծաւ զօրութեամբ քակել զդրունս եկեղեցւոյն. իսկ սուրբն Ղևոնդ... ոչ ետ թոյլ... այլ բաղում ամբոխ աղաղակի զօրացն և մոգացն հասուցանէր։ Վիրգս ի ձեռին առեալ՝ զկառափունս մոգացն և մոգպետին ջարդեցին։ Եւ այսպէս շատս տագնապի ի վերայ մոգպետին հասուցանէին։ Բազում անգամ աղաչէր զօգնականսն իւր, զի ի մահուանէ կարասցեն զնա ապրեցուցանել և ողջանդամ յարքունիս հասուցանել» (Անդ)։ Առ Փարպեցւոյն ևս տեսանք մոգերու կոտորած, բայց յետ վեց կամ աւելի ամսոց, այսինքն Վարդան կը դառնայ յետս, ապստամբութիւնը կը պատրաստուի գաղտ և կը յայտնուի, և ապա կրակարաններ կը քանդուին, և մոգերէն ոմանք կ'սպանուին։ Ըստ Փարպեցւոյն՝ Վասակ կը միաբանի ընդ Վարդանայ յապստամբութիւնն, թէպէտ ակամայ. յետ մեկնելոյն Վարդանայ ի Վիրս, ինչպէս տեսանք՝ կը զատուի ի Վարդանանց ուրիշ համամիտ նախարարներով։ Ըստ Եղիշէի՝ Վասակ ի սկզբանէ համամիտ է ընդ մոգպետին, նա մանաւանդ քան զնա աւելի նախանձաւոր կրակապաշտութեան տարածման ի Հայս, այնպէս որ մոգպետը կ'առաջարկէ գրել թագաւորին՝ յետ կենալ զհայս ի մոգութիւն դարձուցանելու խորհուրդէն, բայց Վասակ կ'ընդդիմանայ.—«Եթէ ինքեանք աստուածքըն եկեսցեն, ասէր մոգպետն, յօգնութիւն՝ չէ հնար օրինացս մոգութեան ի Հայս առնուլ հաստատութիւն»։ Հոս Եղիշէ մոգպետին բերանը կը դնէ ի նպաստ քրիստոնէութեան փառաւոր գովեստ մը, որ ջերմագոյն քրիստոնէէ հազիւ կրնայ սպասուիլ, ոչ թէ մոգպետէ. «Լուեալ իսկ իմ էր ի նախնեաց մերոց, եթէ յաւուրս Շապ-

հօյ արքայից արքայի, իբրև սկսաւ ուսումնդ այդ աճել և բազմանալ և լնուլ զամենայն երկիրն Պարսից, և ևս անդր յարևելս հասանել, որ վարդապետքն էին օրինացն մերոց՝ յորդորեցին զԹագաւորն, զի մի՛ բնաւ ամենևին բարձցին օրէնք մոգութեան յաշխարհէն՝ տալ հրաման սաստիկ, զի լռեալ դադարեսցէ քրիստոնէութիւնն։ Եւ որչափ նա կամեցաւ արգելուլ՝ ևս քան զևս աճեցին և բազմացան, և հասին մինչև յաշխարհն Քուշանաց, և անտի ի հարաւակողմն մինչև ի Հնդիկս տարածեցաւ։ Եւ այնպէս աներկիւղ և համարձակ էին յաշխարհին Պարսից՝ մինչև յամենայն քաղաքս աշխարհին եկեղեցի շինեցին, որ զանցուցանէր պայծառութեամբ զԹագաւորաբնակ արքունեօք։ Շինէին և վկայարանս իմն անուանեալս, և զնոյն զարդ եկեղեցեաց զարդարէին, և յամենայն տեղիս, յապատս և յանապատս միայնանոցս շինէին։ Եւ իբրև ոչինչ երևէր յայտնի օգնութիւն ուստեք՝ աճելով աճէին և բազմանալով բազմանային, և մարմնաւոր մեծութեամբք մեծանային։... Թէև արկ ի նոսա Թագաւորն զձեռն իւր խստութեամբ և զբազումս կալաւ և չարչարեաց ի նոցանէ, և զևս բազումս մահուամբ սատակեաց՝ դառնացաւ և ձանձրացաւ յանձն իւր, և զնոսա ոչ կարաց նուազեցուցանել ի բազմութենէն։ Դարձեալ Թէպէտ փակեաց և կնքեաց զդրունս եկեղեցեացն ընդ ամենայն աշխարհն Պարսից՝ նոքա զամենայն տուն եկեղեցի արարին, և յամենայն տեղւոջ զիւրեանց օրէնսն կատարէին։ Եւ զանձինս վկայարանս համարէին, և լաւագոյն զշինուածս մարդկեղէնս քան զհողեղէնս համարէին։ Սուրք սպանողացն բթեցան, և նոցա պարանոցքն ոչ ձանձրացան։ Սրտմըտեալ էր Թագաւորն, և յոյժ դառնացեալ դահիճք բարկութեանն. Իսկ նոքա արթունք և զուարթունք և խնդալից ընդունէին զամենայն հարուածս տանջանացն, և սիրով տանէին զամենայն յափըշտակութիւն ընչից իւրեանց։ Իբրև ետես Թագաւորն, եթէ գռոհ տուեալ դիմեցին ի մահ իբրև խաշինք սուրբք յաղն երկնաւոր՝ արգել և կարճեաց ի նոցանէ զհարուածս տանջանացն, և հրաման ետ մոգաց և մոպետացն, զի մի՛ ամենևին ոք խռովեսցէ զնոսա, այլ հաստատեալ կայցեն աներկիւղութեամբ յիւրաքանչիւր ուսմունս։... Զայս ահա ի լսելոյ գիտեմք. բայց այս զոր ես ինձէն աչօք տեսի՝ Թուի ինձ Թէ մեծագոյն ևս լինի քան զառաջինն։.. Ես անտեղեակ էի անքակ ուխտի եկեղեցւոյդ ի միմեանց։.. Դու որ ի մանկութենէ յայդմ օրէնս սնեալ էիր և ճշմարտեալ գիտէիր զպնդութիւն մարդկանդ... ընդէ՞ր ոչ զայդ ամենայն հաւաստեաւ յանդիման չասացեր ցԹագաւորն. քանզի ամենայն նախարարացն աւագ դու էիր, և զբոլոր աշխարհս քեզ յանձն արարեալ էր մարզպանութեամբ....

ապա թէ ոչ՝ և դու ի նոցա բանի ես, և քոյով խորհրդով անցուցին զայս անցս ընդ իս և ընդ զօրս։ Եթէ այդպէս է, և քեզ կամք չէ ունել զմոգութիւն՝ մի ինչ պատկառեր դու երկիւղիւ յարքայէ. ես գրեմ ցուցանեմ ի դուռն մովպետան մովպետի և մեծ հազարապետին, զի ածցեն զարքայ ի հաւանութիւն, որպէս զի ի բաց թողացուսցէ ըստ առաջին հրամանին» (Եղիշ. էջ 101—106)։

Ըստ Եղիշէի՝ որպէս թէ Վասակ չհաւանելով բանից մոգպետին, այն է մեղմով զիջանելու խորհրդեան՝ կը խրատէ զնա չվհատել, այլ բանի յառաջ տանել գործը, և խնդրել բերել կու տայ զօրք ի Սիւնեաց.—«Ետ պատասխանի մարզպանն մոգպետին և ասէ. Ամենայն բանք խրատուդ զոր տայցեր՝ ճշմարիտ են, բայց սակաւիկ մի երկայնամիտ լեր… մինչև ես ինձ ույժ ժողովեցից զօր ի թիկունս անելոյ, և զուխտ եկեղեցւոյդ թերևս կարացից երկփեղկել։ Եւ եթէ զայդ այդպէս արարից՝ գիտեմ ապա թէ և զհրամանն արքունի կարող եմ կատարել։ Եւ անդէն հրոս հանեալ ի Սիւնեաց աշխարհէն՝ զիւր գունդն ստուարացոյց ի թիկունս օգնականութեան մոգաց և մոգպետին։ Եւ ապա սկսաւ ասել. Ա՛զէ, դու անգամ մի հրովարտակ ի դուռն տուր վասն այրուձիոյն որ յԱղուանսն է տասն հազար, զի ի ձմերոց ի Հայս եկեսցեն. և յորժամ զնոսա ի ձեռին ունիցիմք՝ չիք ոք որ եղծանել կարէ զհրամկն արքունի» (Անդ)։ Մոգպետը չհամարիր զայս օգտակար. «Այդ խորհուրդ դարձեալ իմոց բանիցս ընդդէմ է, ասէ. քանզի մեք յորժամ բռնութեամբ կռուեսցուք ընդ աշխարհիս՝ աշխարհս ի բաց քանդի, և մեք ի պատուհասէ չապրիմք. անձանց վնաս, և արքունի մեծապէս զեան»։ Բայց Վասակ չանսար մոգպետին, «զի որտի մտօք կալեալ էր զպարսկական օրէնսն», և կ'սկսի կաշառօք և անտակ զբօսանօք ջանալ յինքն կորզել ժողովուրդը.—«Սկսաւ այնուհետև պատրել զոմանս կարասւով և զոմանս ողոքական բանիւք. զամեկն ամենայն ահեղ բանիւք սպառնալեաց սրտաթափ առնէր։ Հանապազորդ առատացոյց զռոճիկսն տաճարին (սեղանոյ), և յերկարէր զնուագսն ուրախութեան, մաշելով զերկարութիւն գիշերաց յերգս արբեցութեան և ի կաքաւս լկտութեան. քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական և զերգս հեթանոսականս։ Բերեալ էր և յարքունուստ բազմութիւն կարասւոյ. և բազում նենգութեամբ զանմեղ մարդիկ հրապուրէր և յինքն արկանէր։… Այնչափ յիմարեցոյց և ապշեցոյց զմիտս մոգպետին՝ մինչև չետ նմա իմանալ զելս իրացն։ Սկսաւ բաշխել մոգս ի տունս նախարարացն և մեծամեծ ռոճիկս կարգել, զոհել պատրուճակս, և բռնաբար կնքաւոր մարդկանն տալ ուտել միս յագանոյ և երկիր պագանել արեգականն։

Իբրեւ սկսաւ բազմանալ ընդ ամենայն աշխարհն այնպիսի պղծագործ խառնակութիւն՝ յանդգնեցան եւս կանայք փշտիպանացն յաւուր կիւրակէի անցուցանել զճրագունս եկեղեցւոյն եւ պատառել ըզհանդերձս հաւատաւոր կանանցն» (Եղիշ. էջ 108—110)։ Եղիշէ կը թուի ասել, թէ Վասակ այնչափ չարեաց վրայ յաւել նաեւ համարձակութիւն տալ փուշտիպանաց (մոգաց օգնականներուն) կանանց՝ կիրակի օր մարելով եկեղեցւոյն ճրագներն՝ սպասաւոր կուսաններ մտնել յանառակ խառնակութիւն։ Արդարեւ անամօթ զրպարտութիւն։

Յայտնի է անաչառ ընթերցողաց, թէ այս մասն պատմութեան Եղիշէի, կամ այս անուան տակ ծածկուած անձին, ո՛ ոք և է՝ չէ ամենեւին ճշմարիտ։ Այն փառաւոր գովեստն զքրիստոնէութենէ եւ զքրիստոնէից չկրնար ընծայուիլ մոգպետի մը. մոգպետ մը չէր կրնար ըսել, առանց լինելոյ հակառակն իւր դենին եւ պաշտօնին, թէ քրիստոնեայք «զաւոհ տուեալ կը դիմէին ի մահ իբրեւ խաշինք սուրբք յաղն երկնաւոր», եւ ոչ իբրեւ պատմութիւն ճշմարիտ է, թէ քրիստոնեայք յառաջ քան զՇապուհ եւ առ Շապհով այնչափ բազմացան եւ մեծացան ի Պարսկաստան՝ մինչեւ «զամենայն տուն եկեղեցի արարին», թէ եկեղեցիք նոցա «զանցուցանէին պայծառութեամբ զթագաւորաբնակ արքունեօք», եւ թէ՝ այնպէս սաստիկ էր կոտորածն, մինչեւ «սուրք սպանողացն բթեցան, եւ նոցա պարանոցք ոչ ձանձրացան»։ Կար արդարեւ հալածումն առ Շապհով, բայց ոչ այնչափ որչափ կամի մոգպետն Եղիշէի, սուտ գովաբան քրիստոնէութեան։ Չէ դարձեալ ճշմարիտ խրատն, զոր կը դնէ Եղիշէ ի բերան Վասակայ, որպէս թէ կը յորդորէր նա զմոգպետն չմեղմացունել ամենեւին հալածումը, այլ յառաջ տանել բռնութիւնը զինու զօրութեամբ։ Եւս աւելի սուտ եւ զրպարտութիւն են հնարքն՝ առ որս որպէս թէ կը դիմէ Վասակ, այսինքն շուայտութեամբ եւ լկտի զբօսանօք, նաեւ կաշառօք պատրել ժողովրդեան ռամիկ մասը։ Այս բաներուն նշմարանքն անգամ չկան առ Փարպեցւոյն։ Բայց երթանք յառաջ։

**30.** Այս ամէն չարեաց, այսինքն Վասակայ անզգամութիւններուն, դարմանը կը խորհին դարձեալ եպիսկոպոսունք ըստ Եղիշէի։ Նախ բանակը կը բաժնեն երկու. յետոյ Աւետարան ի ձեռին կը մտնեն սպարապետին տունը, կը խրատեն զՎարդան եւ կը քաջալերեն, կը վառեն զօրաց եռանդը, կը բռնեն զՎասակ, որ կեղծաւորութեամբ կ'ըլլայ յոտս եպիսկոպոսաց, եւ կ'աղաչէ ի մահուանէ։ Կ'առնուին եւ կը քանդուին բերդեր, զորս գրաւած էին Վասակեանք, արք եւ կանայք կը վարին ի գերութիւն.—«Զայս

ամենայն—այսինքն Վասակայ անօրէնութիւններն—երբև ասէին սուրբ եպիսկոպոսունքն՝ ևս քաջ դրդեալ յորդորեցան ի նոյն մեծաքանութիւն, և հնարագէտ իմաստութեամբ ընդ երկուս բաժանեցին զբանակն... ԶԱւետարանն ի ձեռն առեալ հասին և անկան առանց հարցանելոյ ի վանս սպարապետին, ուր ժողովեալ էին զօրքն Հայոց։ Համբարձին զձայնս իւրեանց և ասեն. Աղաչեմք զձեզ զամենեսեան սուրբ Աւետարանաւս, եթէ ձերով խորհրդով գործէ զայն անօրէնութեան չարիս մարզպանն և մոգպետն՝ նախ զմեր պարանոցս հատէք, և ապա յեկեղեցին ձեռնարկեցէք։ Ապա թէ առանց ձեր կամաց նոքա զայն չարն գործեն՝ այսօր խնդրեսցի վրէժդ այդ ի նոցանէ։... Ցայնժամ ամենեքեան ի նախանձ բարկութեան բրդեցան, մինչև ամենայն տեսողացն երիկամունքն դողային։... Ընթացան վաղվաղակի ի զէնս իւրեանց, վառեցան կազմեցան զգիշերն ամենայն, և ընդ ծագել արեգականն զգունդն յերիս մասունս բաժանեալ ի բանակն (Պարսից) արկանէին։ Գունդն առաջին յարևելից կուսէ, և գունդն երկրորդ յարևմտից կողմանէ, և գունդն երրորդ ի հիւսիսոյ կողմանէ՝ շուրջանակի ի մէջ առեալ փակեցին զբազմութիւն բանակին (Պարսից), և զբագինս կոտորեցին, և զևս բազմագոյնս կապեցին զերևելի մարդիկ և արկին ի բերդս ամուրս ընդ իւրեանց իշխանութեամբ։... Իսկ զմարզպանն ձերբակալ արարին։ Միաբանէր նա ընդ նոսա երդմամբ՝ հաստատուն կալ յուխտին, զղջանայր զառաջին քակումն ի նոցանէ։ Անկանէր ապաշխարութեամբ յոտս սուրբ եպիսկոպոսացն, և աղաչէր խաղապատելով, զի մի մերժեալ ընկեսցի առ ի նոցանէ։ Կրկնէր և երեքկնէր զանսուտ երդումն առաջի բազմութեանն ի սուրբ Աւետարանն, դնէր և կնքէր զերդումն և կապէր զԱւետարանէն, և աղաչէր զի յԱստուծոյ խնդրեսցի վրէժխնդրութիւնն, և մի՛ նոքա մարդկաբար սատակեսցեն զնա։ Իսկ նոքա թէպէտև հաստատեալ գիտէին զնենգաւոր կեղծաւորութիւն նորա, և թէ խաբէութեամբ դառնալ անդրէն ի հին մոլորութիւնն՝ ոչինչ փոյթ առնէին ձեռն արկանել ի նա վասն առաջին յանցանացն, այլ սուրբ Աւետարանին թողին ի դատապարտութիւն։... Ցայնմ ժամանակի դարձեալ յարձակեցան ի վերայ բերդիցն և աւանաց յամրոցս աշխարհին զոր ունէին Պարսիկքն. տապալէին քանդէին զբնակութիւնս նոցա։ Առաջին՝ զմեծն Արտաշատ հանդերձ աւանօք իւրովք. և առնուին զանմատոյց ամուրս – զԳառնի քաղաքն, զԱնին, զԱրտագերս և զաւանս իւրեանց, զԵրկայնորդին և զԱրհնին և զաւանս իւրեանց. զԲարձրաբուղն, զԽորանիստն, զԾախանիստն, զանկասկածելի Ողականն, և ընդ նոսա զաւանս իւրեանց. զԱրփանեալն, զՎանն աւան,

ընդ նմին և զաւանս իւր, զԳառնին և զԿապոյտն, զՈրոտն և զՎասակաշատն։ Զամենեսին զայս իւրաքանչիւր գեղիւք և ագարակօք, զօրօք՝ և զօրագլխօք ի նմին ամի առեալ տապալեցին, և ի գերութիւն վարեցին զարս և զկանայս ընչիւք և ստացուածովք, հանդերձ պատուական գանձիւք և նոցին սպասուք։ Տապալեցին քանդեցին զշինուածս պաշտօնարկի և պաշտաման կրակի» (Եղիշ. էջ 108—118)։

Այս ամենայն տեղիք—Արտաշատ, Գառնի, Անի, Արտագերք, Ողական, Վան, այլովքն հանդերձ, զորոց ասէ Եղիշէ, թէ Վարդանանք քանդեցին, տապալեցին, այրեցին հանդերձ գեղիւք և ագարակօք, և գերի վարեցին բնակիչներն, արս և կանայս, ընչիւք և ստացուածովք՝ ապաքէն էին Հայոց քաղաքներ, բնակիչներն Հայ քրիստոնեաներ, քանզի չէ հաւանական թէ այնպէս կարճ ժամանակի մէջ, այսինքն յետ դարձին նախարարաց իբր քսան և հինգ կամ երեսուն աւուր մէջ (ըստ Եղիշէի) եղան կրակապաշտ։ Ի՞նչ հաւանականութիւն կայ ուրեմն, թէ հաւատոյ պաշտպան զօրք մը, որպիսի էին Վարդան և իւրքն՝ հասուցին այնչափ չարիս այն անմեղ հայ բնակչաց։ Ըստ մեզ՝ ինչպէս վերի բոլոր նկարագիրն՝ նոյնպէս այս աւերմանց և գերութեան պատմութիւնն գիւտ է Եղիշէի, իբր թէ Վարդանանց քրիստոնէական եռանդը ցուցնելու համար։ Փարպեցին չունի այս պարագաներէն և ոչ մին։ Եղիշէի բուռն միտումն ջախջախելու զՎասակ՝ կու տայ նմա փոխել ըզպատմութիւնն յանհամ վէպ։

**31.** Զարմանալի է, որ մինչ Վարդանանք կը գործեն այն բռնութիւններն այնչափ քաղաքաց անմեղ բնակիչներուն վրայ ըստ Եղիշէի՝ միւս կողմանէ կը գործուին մեծամեծ սքանչելիք ի նպաստ այն հրօսակային զօրուն։ Ամուր բերդեր կը կործանին ինքնին, զարմանալի տեսիլներ կ'երևան շատերուն, աստեղք անգամ քան զսովորականն աւելի պայծառացեալ կ'երևէին, տղայք իսկ կ'առնուն զէնք.—«Մինչդեռ յայսմ մեծի առաքինութեան կատարեալ գործէին զգործ նահատակութեանն՝ երևէր իմն ի վերայ ամենեցուն աստուածային շնորհք. քանզի առանց հրամանի ի զօրացն Հայոց յարևելից կողմանէ աշխարհին յարձակեցան ոմանք յԱտրպատական աշխարհն, և ի տեղիս տեղիս բազում վնասս արարին, առնլով և աւերելով և քանդելով բազում ատրուշանս։ Իսկ որ ի մեծ ամուրսն անկանէին՝ խաչանշան արարեալ ի վերայ զօրուն անկանէին. որ և երկու մեծամեծ բերդաց պարիսպքն առանց ուրուք մերձենալոյ անկեալ կործանեցան. մինչև ամենայն բնակչաց երկրին զահի հարեալ ի մեծ նշանէն՝ ինքեանք իւրեանց ձեռօք զկրակատունսն այրէին, ուրանալով զօրէնս մոգութեանն՝ խոստովանէին ի

տուրք Աւետարանն։ Եւ այլ մեծամեծ աջողութիւնք կատարէին ի ձեռն զօրականին. քանզի ուր ոչ էր ակնկալութիւն, եթէ զանուն Աստուծոյ ոք յիշեսցէ՝ արհաւիրք մեծ անկանէին ի վերայ նոցա. և ամենայն մարդ պատմէր ընկերի իւրում տեսիլս նորս և զարմանալիս։ Սոյնպէս և աստեղք յերկինս երևէին յոյժ լուսաւորք պայծառացեալ, զոր ոչ ունէին յառաջին բնութեանն։ Եւ ամենայն տղայք աշխարհին իբրև զարս պատերազմողս խիզախէին» (Եղիշ. էջ 118, 119)։

**32.** Եղիշէ գիտէ զերթն Վարդանայ յԱղուանս հանդերձ զօրու և յաղթութիւնը որ անդ, ինչպէս նաև զառաքումն պատգամաւորութեան առ կայսր ըստ օրինակի Փարպեցւոյն, սա տարբերութեամբ միայն, որ մինչ առ Փարպեցւոյն պատգամաւորք են Վահան Ամատունի, Հմայեակ եղբայր Վարդանայ և Մերուժան եղբայր Ադանայ Արծրունւոյ, արք անուանիք, որպէս և վայել իսկ էր պատգամաւորութեան՝ ըստ Եղիշէի՝ մի միայն է պատգամաւորն, Ատոմ ոմն Գնունի.—«Ցայնմ ժամանակի զմի ոմն ի մեծ նախարարացն, ի տոհմէ Գնունեաց Ատոմ, ճեպով առաքեցին յերկիրն արևմտից, ցուցանել զայս ամենայն խորհուրդ զչարիմաց թագաւորին արևելից, խնդրել ի նմանէ (Թէոդոսէ) օգնականութիւն սատարութեան, և եթէ նա կամեսցի՝ նմա իսկ մտանել ի ծառայութիւն» (Եղիշ. էջ 121)։ Եղիշէ համաձայն է Փարպեցւոյն յայնմ ևս, թէ մինչ Թէոդոս պատրաստ էր օգնել Հայոց՝ կը վախճանի, և թէ յաջորդ նորա Մարկիանոս կը մերժէ Հայոց խնդիրն. այլ թէ պատգամաւոր ևս ղրկելով զԵղփարիոս ոմն առ Ցազկերտ, «եմուտ ընդ նմա յուխտ հաստատութեան՝ ձեռնթափ լինել ի զօրացն Հայոց զինու և զօրու և ամենայն օգնականութեամբ»՝ այս չէ ճշմարիտ. այսպիսի ուխտ կամ դաշն Մարկիանոսի ընդ Ցազկերտի յիշուած չէ ի պատմութեան, և ո՛չ Եղփարիոս անուն ոք կայ յիշուած։ Կայ Արդաբուրիոս ոմն սպարապետ Թէոդոսի Բ.։ Գաթըրճեան կը կարծէ, թէ այս Արդաբուրեայ թոռն էր Եղիշէի Եղփարիոսն (Արդաբուրիոս), սպարապետ Մարկիանոսի, բայց այս Արդաբուրիոս կրտսերն էր ամօք ինչ յետոյ քան զպատերազմն Վարդանանց։ Ուխտ դաշանց հրաժարելոյ յօգնելոյ Հայոց՝ եղած էր ի ձեռն Անատոլեայ սպարապետի առ Թէոդոսիւ Բ. զայս ուխտ կը շփոթէ Եղիշէ, կամ կը համարի կրկին հաստատուած հակառակ Հայոց ի նախատինս Մարկիանու, զոր և կը կոչէ անարի։

**33.** Չթուիր նոյնպէս վաւերական Եղիշէէ բերուած առ կայսր նամակին պատճէնն, ուր հանդերձ այլովք ասի, թէ Տրդատ, ինչպէս զթագաւորութիւնն առաւ ի Հռոմայեցւոց՝ նոյնպէս «զհաւատսն

որ ի Քրիստոս՝ ընկալաւ յեպիսկոպոսապետէն Հռոմայ»։ Անհարկաւորութիւն՝ որ հակառակ է ոչ ազգային եկեղեցական աւանդութեան միայն, այլև ընդհանուր եկեղեցական պատմութեան և եկեղեցւոյ ոգւոյն։ Ուստի հարկ է ասել, թէ կամ առ Եղիշէիւ կար ուրիշ ազգային աւանդութիւն, որ Տրդատայ դարձին ծագումը կը դնէր ի թելադրութենէ եպիսկոպոսապետին Հռոմայ, կամ, որ աւելի հաւանական է՝ թուղթն առ Թէոդոս առ Եղիշէի՝ է գիւտ նորին իսկ Եղիշէի, և չունի ամենևին պատմական հիմն։

Փարպեցին ևս կը պատմէ, թէ նամակ գրուեցաւ առ կայսր, բայց ի Վասակայ և ի նախարարաց, ո՛չ ի կղերէն, և չտար օրինակը։ Ըստ Եղիշէի՝ Յովսէփ եպիսկոպոս կը գրէ թուղթը հանդերձ եպիսկոպոսակցօք և նախարարօք։ Ահա պատճէն նամակին Հայոց առ Թէոդոս ըստ Եղիշէի. «Յովսէփ եպիսկոպոս բազում եպիսկոպոսակցօք իւրովք և ամենայն զօրք Հայոց, Վասակ մարզպան և Ներշապուհ Որմբոսեան հանդերձ սպարապետաւս և ամենայն մեծամեծ նախարարօքս առ մեծանունդ Թէոդոս կայսր. Բազմացի ողջոյն մեր առ քեզ և ամենայն զօրաց քոց, որ խաղաղասէր մարդասիրութեամբ ձերով տիրէք ծովու և ցամաքի, և չիք ոք յերկրաւորացս՝ որ ձերում անարգել տէրութեանդ ընդդէմ դառնայցէ։ Որպէս մեք իսկ ունիմք զանսուտ յիշատակարանսն զառաջինն նախնեացն ձերոց. ունելով զՆւրոպէ՝ անցին և տիրեցին և Ասիացւոց կողմանցն, և ոչ ոք գտաւ ստամբակեալ և ելեալ ընդ ձեռն նոցա։ Եւ յայնչափ մեծ իշխանութեան դաստակերտ մեծ և սիրելի զՀայոց աշխարհս անուանէին։ Վասնորոյ և նախնին մեր Տրդատիոս յիշելով զառաջին սէրն ձեր, որ ի տղայութեան փախուցեալ ի հայրասպան մարդախողխող հօրեղբարցն իւրոց՝ ապրեալ սնաւ յերկրի Յունաց, և ի ձէնջ թագաւորեալ տիրէր հայրենի աշխարհիս. սոյնպէս և զհաւատսն որ ի Քրիստոս՝ ընկալեալ ի սուրբ եպիսկոպոսապետէն Հռոմայ, որ լուսաւորեաց զխաւարային կողմանս հիւսիսոյ. զոր և այժմ կամին ի մէնջ կորզել հանել խաւարասէր որդիքն արևելից։ Եւ մեք ի ձեր քաջութիւն արութեանդ խիզախեալ՝ էր ինչ որ ընդդէմ դարձաք նորա հրամանացն, և բազում այն է որ արդ առաջի պատրաստեալ եմք։ Ընտրեցաք զմահ աստուածպաշտութեամբ՝ քան զկեանս ուրացութեամբ. եթէ դուք ևս ի ձեռն առջիք զմեզ՝ ահա կրկին կենաց դիպեցաք և ոչ միանգամ մահու։ Եւ եթէ սակաւիկ մի հեղգայք՝ գուցէ բազում և այլ աշխարհաց հասանիցէ տապ բոցոյ սորա» (Եղիշ. անդ)։ Զարմանալի է, թէ ինչպէս Տրդատ, որ ըստ աւանդութեան դեռ մանուկ տղայ էր ի փախչելն՝ կարէր յիշել զառաջին սէրն Հռոմայեցւոց և ապաւինել առ նոսա։

**34.** Չէ հաւանական նաև այն զոր կը պատմէ Եղիշէ, թէ «իբրև յանդիման եղեն մեծի թագաւորին (Թէոդոսի), և ընթերցան զգիր պաղատանաց Հայոց աշխարհին՝ բազում մատեանք ի մէջ եկեալ ընթերցան, որ զնոյն ուխտ հաստատութեան ի ներքս գտանէին»։ Աւելորդ էր Թէոդոսի, ինչպէս արդէն ըսուեցաւ, մատեաններ ի մէջ բերել Հայոց հետ հին ուխտ մը յիշելու համար․ միթէ չէր գիտեր Թէոդոս, թէ ի վաղուց ի նախնեաց անտի դաստակերտ (աւատ) Հռոմայեցւոց էր Հայաստան․ չէր յիշեր այն երկար և արիւնահեղ պատերազմներն, որ այն երկրին համար եղան իւր հօրը, հաւուն և իւր իսկ ժամանակ, բայց ստիպեալ է դիպաց՝ հրաժարած էին նորա մեծ մասէն։ Քան այն հին ուխտն՝ աւելի մօտ և կենդանի էին ի միտս Թէոդոսի կրկին դաշինքն ընդ Պարսից։ Դիտենք ի Սոկրատայ, Սոզոմենոսէ և Թէոդորետոսէ, երեքին ևս ժամանակակից, թէ ինչպէս առ Վռամաւ Ե, հարբն Յազկերտի Բ․ (421) եղաւ պատերազմ յԱրզանենէ (Արզն) նահանգին Հայոց զոր ունէին Պարսիկք, և ապա ի Միջագետս, և յաղթութիւնն մնաց անորոշ, բայց Թէոդոս ստիպուեցաւ կռել դաշն հարիւրամեայ խաղաղութեան։ Այն դաշանց հակառակ՝ այս Յազկերտ նորոգեց պատերազմը (440, 441), յաղթուեցան Հռոմայեցիք, և Անատոլիոս սպարապետ արևելից ղրկուեցաւ մեծամեծ ընծայիւք առ Յազկերտ․ փախստեայ պարսիկ քրիստոնեաներ, զորս կը պաշտպանէր Անտիոքոս հայրապետ՝ յանձնուեցան Պարսից ըստ խնդրոյ թագաւորին, և նորոգեցաւ խաղաղութիւնն։ Այս դէպք ելած չէին յիշողութենէն Թէոդոսի, և դժուարին էր Յունաց միւսանգամ բանալ պատերազմը՝ որմէ հազիւ պրծած էին իբր ութ կամ ինն ամօք յառաջ։ Ուստի չկար ամենևին հարկ մատեաններ մէջ բերելու, և ոչ ճշմարիտ է այն, թէ Մարկիանոս ի ձեռն դեսպանաց նոր ուխտ հաստատեց ընդ Յազկերտի չօգնել Հայոց—«Փութացաւ արձակեաց դեսպանս առ թագաւորն Պարսից, և եմուտ յուխտ հաստատութեան ձեռնթափ լինել ի Հայոց»։ Այս ուխտն արդէն կար։ Հաւանականագոյն է այն՝ զոր կը պատմէ Փարպեցին, թէ Անատոլիոս սպարապետ Անտիոքայ և Փլորենտիոս անուանի պատրիկ, վերակացու արևելից առ Թէոդոսիւ (428—449), և յետոյ առ Մարկիանոսիւ (450—455), խորհուրդ տուին Մարկիանոսի, յաջորդին Թէոդոսի՝ հրաժարել օգնելէ Հայոց․—«Պատասխանի տուեալ Անատոլեայ, որ ի ժամուն սպարապետ էր Անտիոքայ, և Փլորենտի ուրումն, որ էր աւագ դրանն թագաւորին, և ասեն․ Մեզ ոչ թուի հաճոյ արհամարհել զուխտ և զհաստատութիւն՝ զոր ի բազում ժամանակաց գրեալ և կնքեալ է առաջին թագաւորացն, և գրգռել պատերազմաւ իրս մի

խաղաղացեալս, և ի բաց հանել զաշխարհ մի ի ծառայութենէ թագաւորին իւրեանց։ Այլև զելս անյայտ իրացդ պարտ է տձել զմտաւ, զոր ոչ ոք կարէ գիտել, թէ որպէս, զիւրեանց և կամ սոսոփկ պըղտորմամբ պատերազմդ եղեալ վճարեսցի։ Եւ զայս այսպէս սասցեալ՝ կասեցուցին զմիտս թագաւորին, և վնասեցաւ ակնկալութիւնն Հայոց որում ուշ եդեալ մնային, և ոչ պատահեցաւ» (Փարպ. ԽԱ.)։

**35.** Պատգամաւորք մեկնած էին առ կայսր, և Վարդան կը գտնուէր զօրօք յԱզուանս՝ երբ Վասակ ուրիշ երեւելի նախարարօք զատուեցաւ ապստամբութեան կուսակցութենէն։ Արդարև չունինք ստոյգ վկայութիւն, թէ Վասակ և իւրքն առ ատելութեան արդեօք ընդդէմ քրիստոնէութեան, թէ վնասակար տեսնելով ապստամբութիւնը, զատուեցան ի Վարդանանց։ Եղիշէ և Փարպեցին են յառաջին կարծիս։ Սակայն շատ հաւանական է, թէ Վասակ որ չէր մէտ յապստամբութիւնն՝ կը յուսար օգնութիւն ի Ցունաց և յայլոց, մանաւանդ Ցունաց բաժնին հայ նախարարներէն. երբ այս յոյսն ելաւ ի դերև՝ զատուեցաւ ապստամբ կուսակցութենէն երեւելի նախարարօք, աղէտալի գտնելով ապստամբութեան վախճանը։ Բաց աստի ունինք ի գովութիւն Վասակայ երկու վկայութիւն, մին ժամանակակից, երկրորդին եւս ըստ բաւականին հզօր, որում միտ չէ դրուած ցարդ։ Խորենացւոյն պատմութիւնը գովութեամբ կը յիշէ զՎասակ՝ իբրև նպաստամատոյց Մեսրոպայ ի քարոզութեան նորա յԱղուանս. «Կոչեալ (Մեսրոպայ) զԲենիամին ոմն շնորհատուր թարգման, զոր անդանդաղ արձակեաց մանուկն Վասակ Սիւնեաց տէր ի ձեռն Անանիայի եպիսկոպոսի իւրոյ» (Խոր. Գ. ԾԴ.)։ Աւելի մեծ գովեստիւ կը խօսի Կորիւն. «Ցորում ժամանակի, ասէ (այն է ի քարոզութեանն Մեսրոպայ, 423—30), պարգևեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց քաջն Սիսականն Վասակ, այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց, շնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ։ Բազում ինչ նպաստութիւն ցուցանէր աւետարանագործ վարդապետութեանն, իբրև որդւոյ առ հայր հպատակութիւն ցուցեալ, և ծառայեալ ըստ Աւետարանին վայելչութեան. մինչև ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր» (Կորիւն)։ Չենք կրնար յառաջ քան 441 գրուած դնել Կորեան պատմութիւնը, քանզի կը յիշէ նա Սահակայ և Մեսրոպայ մահը, որ եղաւ 440-ին. ապա գէթ այն թուականին (441) Վասակ արժանի էր ըստ Կորեան կոչուելու «այր խորհրդական և հանճարեղ և յառաջիմաց ըստ շնորհատուր իմաստութեանն Աստուծոյ»։ Արդարև զարմանալի է, որ մինչ ըստ Կորեան Վասակ, իբրև «քաջ սիսական», «պարգևեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց»՝ ըստ Եղիշէի՝

«ոչ ըստ կարգի ունէր նա զտէրութիւնն Սիւնեաց աշխարհին, այլ նենգութեամբ և քսութեամբ ետ սպանանել զհօրեղբայր իւր զՎաղինակ, և ինքն տարաւ զտէրութիւնն»։ Մինչ ըստ Կորեան Վասակ «բազում նպաստութիւն» կը մատուցանէր Մեսրոպայ «յաւետարանագործ վարդապետութեան», «իբրև որդի առ հայր հպատակութիւն» կը ցուցնէր Մեսրոպայ «ըստ Աւետարանին վայելչութեան», և «մինչև ի վախճան զհրամայեալսն ի նմանէ ի գործ բերէր»՝ ըստ Եղիշէի՝ էր նա անհնարին չար ի մանկութենէ.—«Ոչինչ եթող չարիս զոր ոչ գործեաց ի կեանս իւր»։ Արդարև փառաւոր է գովեստն Կորեան զՎասակայ. բայց արդարացունելու համար առ վայր մի զԵղիշէ՝ դնենք թէ Վասակ մինչև 441, այսինքն մինչև կարծեցեալ Թուականն մատենագրութեան Կորեան, էր արժանի այն գովեստից, այլ յետ այնորիկ, այն է 441-էն մինչև 451, որ է Վարդանանց պատերազմին հաւանական տարին՝ փոխուեցաւ։ Սակայն գիտենք այլուստ, թէ Կորիւն գրած է ոչ թէ 441-ին, այն է իսկ և իսկ զկնի մահուն Սահակայ և Մեսրոպայ, այլ յետ 451-ին, կամ յետ պատերազմին Վարդանանց, քանզի գիտէ Յովսեփայ և ընկերաց նորա, յանուանէ Յովհաննու ուրումն աշակերտակցի նորա և ապա պաշտօնակցի (որ կը թուի լինել Յոհան Մանդակունի) հալածումը և նեղութիւններն ի Տիզբոն.—«Գլխաւորս վերակացուս տեղապահս յայտ արարեալ հարցն կատարելոց. որոց առաջինն Յովսէփ գլխաւոր ժողովոյն, և երկրորդն այլ աշակերտ Յովհան անուն, այր իսկ սուրբ վարդապետասէր և ճշմարտապատում։ Որում դէպ լինէր յետ վախճանի սրբոյն բազում և ազգի ազգի փորձութեանց և կապանաւոր վշտաց, մենամարտիկ երկպատական բռնութեանն ի Տիզբոն քաղաքի վասն Քրիստոսի յաղթութեամբ տարեալ համբերեաց. վասնորոյ և զխոստովանողական անուն ժառանգեաց. ի նոյն վերակացութիւնն (կաթողիկոսութիւն) դառնայր յերկիրն Հայոց» (Կոր.)։ Այսպիսի հալածանք, ինչպէս գիտենք՝ եղան յետ պատերազմին Վարդանանց, և ոչ յառաջ։ Նա մանաւանդ Կորիւն գիտէ և զմահն Վահանայ Ամատունւոյ, որ էր ի համարի կապեալ նախարարաց որ տարուեցան յետ պատերազմին Վարդանանց ի դուռն (Եղիշ. էջ 443. Փարպ. Խէ.), և կը թուի մեռած ի Պարսկաստան, քանզի յետ դարձին նախարարաց ի Հայս՝ չյիշուիր Վահան —«Իսկ բարեացապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր. որ աշխարհածնիւն հայրենեացն սեպհական ոգի գտեալ՝ շնորհօքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ մերձաւոր կենակից վայելէր»։ Այս բանք Կորեան, թէև մթին՝ ապաքէն կ՚ակնարկեն Վահանայ մահը։ Եթէ Կորիւն, ինչպէս հաւանական է, գրեց յետ 451-ին, այն է

*յետ պատերազմին Վարդանանց՝ չէր կրնար լինել անտեղեակ գործոց Վասակայ։ Ի՞նչ կը նշանակէ ուրեմն Կորեան գովեստն զնմանէ։ Նոյն բան է զպատմութենէ Խորենացւոյն, որ, որչափ և կանուխ դնենք՝ չկրնար լինել գրուած յառաջ քան զպատերազմն Վարդանանց, մանաւանդ եթէ ընդունենք թէ այն պատմութիւնը գրուեցաւ ի խնդրոյ Սահակայ մարզպանի։*

**36.** *Ըստ Եղիշէի՝ մինչ Վարդանանք են յԱղուանս՝ Վասակ ոչ միայն կը զատուի ուխտէն՝ այլև մեծամեծ աւերումներ կը գործէ. —«Գուժկան հասանէր (առ Վարդան) յաշխարհէն Հայոց, զճակատ հարեալ և զօձիս պատառեալ, վասն ապստամբին Վասակայ, եթէ յետս կացեալ յուխտէն քրիստոնէութեան և աւերեալ զբազում տեղիս Հայոց աշխարհին, մանաւանդ զձմերոցս արքունի որ կայեանք զօրացն էին, զԳառնին և զԵրամաւնս, զԴրսհանակերտն, զմեծ դաստակերտն, զՎարդանաշատն և զամուրն Օշական, զՓառախոտն, զԱրդեանսն, զՁողկերտն աւան և զբերդն Արմաւրի, զԿուաշն աւան, զԱրուճն, զԱշնակն և զամենայն ոստն Արագածու, և զնահանգն Արտաշատու և զԱրտաշատն ինքնին գլխովին, և զամենայն գեւղս և զաւանս որ շուրջ զնովաւ էին, առեալ աւերեալ և հրձիգ արարեալ... և ինքն սփռեալ տարածեալ ասպատակաւ աւերէր զերկիրն ամենայն» (Եղիշ. էջ 135)։ Այս պատմութիւն ևս չթուիր ճշմարիտ. Նախ՝ Վասակ չէր համարձակեր աւեր և ամայի դարձունել երկիր մը՝ որոյ համար պատասխանատու էր իբրև մարզպան, ինչպէս վաղուց իսկ ազգ արար Նմա մօգպետն ըստ Եղիշէի, թէ «մարզ է աշխարհս», այսինքն նահանգ Պարսից. «յորժամ աշխարհս թափուր լինիցի՝ յայնժամ և քեզ գլխովին մեծապէս վնաս հասանէ յարքունուստ»։ Դարձեալ՝ քաղաքներէն ոմանք, ինչպէս Գառնի, Արտաշատ հանդերձ աւանօք իւրովք, զորոց ասէ Եղիշէ թէ աւերեցան ի Վասակայ՝ արդէն աւերեալ էին ի Վարդանայ ըստ պատմութեան նորին իսկ Եղիշէի, ինչպէս տեսանք վերագոյնն. այնպէս կարճ ժամանակի մէջ Երբ շինուեցան մինչև կրկին աւերել։ Այսպիսի աւերմանց ևս յիշատակութիւն չկայ առ Փարպեցւոյն։ Փարպեցին սաչափ միայն կ'ըսէ, թէ «Վասակ... Նոյնպէս և մնացեալքն առ Նմա աւագանին Հայոց... դեսպան արձակեցին ի Պարսս, և Նամակօք ուխտադրեցին ընդ Նոսա, և զբերդեան ամրոցացն Հայոց ի բաց կալան (ոչ թէ աւերեցին), և զիւրեանցն բերդակալս արարեալ՝ զգուշացուցին, և զորդիս տոհմին Մամիկոնէից և Կամսարականաց և զայլոց տանուտերացն ժողովեալ յիւրաքանչիւր դայեկաց յամուրս բերդից իշխանութեանն Սիւնեաց ետ անցուցանել, և հրամայեաց պահել զամուրսն զգուշութեամբ... և ապա. տալ տանել*

պտղայսն առ թագաւորն Պարսից». և այս՝ մինչ Վարդան էր յԱղուանս. մինչև ի մեկնելն Վարդանայ յԱղուանս՝ Վասակ ըստ Փարպեցւոյն, ինչպէս տեսանք՝ է միաբան ընդ Վարդանայ։

Փարպեցին չունի նաև սա պատմութիւնը, թէ երբ Վասակ լսեց Վարդանայ դարձն յԱղուանից՝ սարսափեցաւ, մինչև թողուլ գերին և աւարը զոր առած էր Այրարատ գաւառէն և փախչել.— «Ազդ եղև ուրացելոյն Վասակայ և իշխանացն որ ընդ նմա էին՝ քաջութիւն նահատակութեան գնդին Վարդանայ յաշխարհին Աղուանից... մինչչև յանդիման եղեալ էին միմեանց՝ զգիշեր մի օգնական գտեալ նորա՝ փախստեայ անկանէր յամուրս իւրոյ աշխարհին, և այնպէս տագնապաւ մերժեցաւ, զգերի և զաւարն զոր առեալ էր յԱյրարատ գաւառէ, ակամայ զիւրն ևս ի վերայ եթող և փախեաւ» (Եղիշ. էջ 138)։

**37**. Բայց Վարդան, կը յաւելու Եղիշէ, ասպատակ կը հանէ Սիւնեաց երկիրը, կ՚աւերէ շատ գաւառներ, կը նեղէ բնակիչներն անհնարին սովով, մինչև ուտել նոցա անասնոց դիակներ. գերի կը վարէ այր և կին, մանր տղայք կը զարնուին գքարի, այլովքն հանդերձ.— «Վարդան գունդս գունդս արձակէր յաշխարհին Սիւնեաց, առնոյր և աւերէր զբազում գաւառս, և այնպէս ի նեղ արկանէր զնա (զՎասակ) և զամենայն զօրսն որ ընդ նմա էր՝ զի զէշս և զձիս մեռելոտիս առ սովոյն վտանգի անխտիր ուտէին։ Եւ բազում հարուածս հասուցանէին ի վերայ ուրացելոյն, մինչև ժողով սուրբ եպիսկոպոսացն և ամենայն ուխտ քահանայութեանն դառնապէս արտասուս իջուցանէին ի վերայ չարաչար վշտացելոցն, որ բոկ և հետի վարէին զարս և զկանայս փափկասունս, և շազում տղայք զքարի հարեալ ընկեցան յանցս ճանապարհաց» (Անդ)։ Զարմանալին այն է, որ եպիսկոպոսունք և երիցունք, ըստ Եղիշէի, յաջողութիւն համարելով այն բարբարոսութիւններն՝ ամբողջ ամիս մը կը սահմանեն աղօթից և շնորհակալութեան.—«Իբրև այս ամենայն աջողութիւն լինէր երկիւղածացն Աստուծոյ՝ ամենայն եպիսկոպոսունք և երիցունք պատուէր հրամանի տուեալ աշխարհին, զողջոյն ամիսն քաղոց պահօք և աղօթիւք առնել խնդրուածս առ Աստուած, և զտօն պատերազմացն յաղթութեան խառնել ի սուրբ տօն յայտնութեանն Քրիստոսի, զի անխափան կացցէ մեծ յիշատակարանս այս ընդ աստուածային անանց տօնին» (Անդ)։ Եւ ոչ այսչափ միայն. ըստ պատմութեան Եղիշէի՝ եպիսկոպոսունք գրով իմացուցին ի Կոստանդնուպոլիս եկեղեցւոյն Յունաց՝ Աստուծոյ այցելութիւնն.—«Եւ զսոյն զայս ամենայն այցելութիւնս Աստուծոյ որ ի վերայ աշխարհին Հայոց երևեցաւ՝ գրեցին սուրբ եպիսկոպոսունքն և ետուն տա-

նել յաշխարհն Յունաց ի մեծ քաղաքն առ սուրբ ուխտ եկեղեցւոյն, զի և նոքա աղօթս առնելով խնդրեսցեն յԱստուծոյ, որպէս սկսաք ի նմին և կատարեսցուք» (Եղիշ. էջ 139)։

**38.** Դարձեալ ըստ նմին Եղիշէի՝ Վարդանանք պարսիկ կալանաւորներէն նշանաւոր զոմն կ'արձակեն առ Թագաւորն՝ պատմել Վասակայ անօրէնութիւններն և այն պատճառաւ կատարուած աւերումներն.—«Զոմն յառաջին կալելոց Պարսկաց լուծեալ և ածեալ զառաջեաւ նախարարացն՝ խօսէին և ցուցանէին զամենայն վնասս... և զխաբէութիւն ապստամբին Վասակայ, որպէս Հայոց բանիւ խաբեաց զԹագաւորն՝ յանձն առնուլ զմոգութիւնն. իբրև չէր ուրուք ընդ նմա բանս եդեալ՝ նա յանձնէ սուտակասպաս լինէր։ Իբրև լիով զայս ամենայն իմացուցին՝ արձակեցին զնա յաղերսապաբանութեան և ի հնարս հայթայթանաց, թերևս կարասցեն զեղբարս իւրեանց ի նեղութենէն զողանալ» (Եղիշ. էջ 140)։ Բայց յառաջ քան զնոսա Վասակ ղրկած էր մարդ, և իբրև չարեաց պատճառ կ'ամբաստանէր կղերը.—«Այլ առ նա անօրէնն Վասակայ գուժկանքն յառաջագոյն հասեալ էին պատմել զաղէտս տարակուսանացն... և զամենայն ամբաստանութիւնն ի սուրբ ուխտ եկեղեցւոյն կրթեալ էր» (Անդ)։ Պատգամաւորը կ'երթայ կը պատմէ Թագաւորին, որ կ'ապշի, կը դողայ, և խոնարհելով իւր ամբարտաւան յամառութենէն՝ հրովարտակաւ կը շնորհէ Հայոց և ուրիշ քրիստոնեայ հպատակաց կատարեալ ազատութիւն քրիստոնէութեան. կը զովէ մանաւանդ զքրիստոնեայս և զքրիստոնէութիւնն։ Այսպէս խրատ կու տան նմա նաև աւագանին, զարմանալով նորա այս յեղյեղուկ մտաց վրայ.—«Երթեալ այլն ի տեղի ձմերոցին՝ պատմեաց զայս ամենայն յականջս Թագաւորին... որ իբրև ստուգեալ հաստատեաց՝... խոնարհեցաւ ի բարձր հպարտութենէն։... Ո՞չ ահա բազում ուսմունք (կրօնք) են յաշխարհիս Արեաց... մանաւանդ վասն օրինաց քրիստոնէութեան... առ մեզ. լաւագոյն քան զամենայն կեշտս երևեալ են մեզ, և բիծ իսկ ոչ կարէ ոք գնել ընտրեալ օրինաց նոցա, այլ զոյգ և հաւասար համարիմ, որպէս և յարգեալ իսկ էին նոքա առ նախնեօքն մերովք. զոր ես ինձէն իսկ յիշեմ առ հարբն իմով։... Մեծացեալ և պատուեալք շրջէին ի դրան արքունի։... Դուք զմի զայն երբէք ոչ յիշեցէք, այլ հանապազօր ձանձրացուցէք զլսելիս իմ, խօսելով զնոցանէ զամենայն չարութիւն. տեսէք զի ետուք գործել ինձ՝ զոր ինչ ոչ կամէի։... Զայս ամենայն և առաւել քան զսոյն խօսէր ընդ ամենայն աւագանւոյն, և զվնասս յանցանացն արկանէր զմոգպետաւն և զմոգօքն. և ամենայն վզըրուկքն և պատուական նախարարքն, որ նստէին յատենին

և ունկն դնէին յեղյեղուկ լեզուի նորա՝ ամաչեցեալ կորանային և ընդ երկիր պշնուին, և զգլուխ ի վեր ոչ կարէին համբառնալ։ Բայց սակաւք ի նոցանէ զմիտս հաճելով ասէին. Այո՛, արքայ քաջ, այդ այդպէս է որպէս ասացերդ։... Մի՛ նեղեալ տագնապիր յանձն քո... Թողացո՛ մարդկանդ զքրիստոնէութիւն, և դոքօք զապստամբսն ածցես ի հաւանութիւն։ Հաճոյ թուեցան բանքն առաջի թագաւորին, և անդէն վաղվաղակի կոչէր զառաջեաւ յամենայն ազգացն որ ունէին զքրիստոնէութիւնն ի զօրու նորա... և հրամայէր անդրէն համարձակութեամբ ըստ առաջին կարգին կալ յօրէնս քրիստոնէութեանն։ Իսկ որ յանցաւորքն էին և ոչ կամէին վաղվաղակի առանց մեծի տպաշխարութեան գալ խառնել ի կարգ քրիստոնէութեան՝ հրամայէր թագաւորն զի բռնի կալցին և տարցեն յեկեղեցին իրեանց։... Եւ իբրև զայս ամենայն արար՝ թողութեան հրովարտակս տուաքէր ընդ ամենայն երկիր իշխանութեան տէրութեան իւրոյ վասն քրիստոնէից։... Զայս ամենայն գրէր և ցուցանէր յերկիրն Հայոց և ի բազում այլ աշխարհս՞ որ ունէին զօրէնս քրիստոնէութեան» (Եղիշ. էջ 141—148)։ Բայց ինքն, ասէ Եղիշէ, պատգամաւոր ղրկելով առ Մարկիանոս, երբ տեղեկացաւ, թէ Հռոմայեցիք չէին մէտ օգնելու քրիստոնէից՝ դարձաւ յիւր առաջին կարծիս.—«Ինքն գաղտ խորամանկեալ փութացեալ դեսպանս առաքէր առ Մարկիանոս կայսր։ Եւ իբրև ստուգեալ ճշմարտեաց, եթէ Հռոմք ի բաց կացին ձեռնտու լինել քրիստոնէութեանն ո՛չ զօրու օգնականութեան և ոչ այլ իրօք՝ դարձեալ անդրէն ի նոյն յառաջին կարծիս մոլորութեանն շրջեցաւ» (Անդ)։ Սակայն Հայք չհաւատացին հրամանին.—«Իսկ Հայք թէպէտ և ընկալան զգիրն խաբեբայ ողոքանաց թագաւորին՝... ասէին ցմիմեանս. Քանի՜ լիրբ է խորամանկ խաբէութիւն նորա, զի երկիցս և երիցս զփորձ առեալ կշտամբեցաւ, և ոչ ամաչէ։... Ոչ այդմ հաւատամք, և ոչ զսուտ հրամանդ յանձն առնումք» (Եղիշ. անդ)։ Դարձեալ ի՞նչ հարկ կար Յազկերտի ղրկելով դեսպան առ Մարկիանոս տեղեկանալ, թէ Հռոմայեցիք չէին օգնական քրիստոնէից. նոյն Մարկիանոս, ըստ Եղիշէի, ինչպէս արդէն տեսանք՝ սակաւ մի յառաջ ի ձեռն դեսպանաց մտած էր «յուխտ հաստատութեան» ընդ Յազկերտի՝ «ձեռնթափ լինել ի զօրացն Հայոց զօրու և զինու և ամենայն օգնականութեամբ» (Եղիշ. էջ 125)։

Վերջին դէպք, զորս ի բաժանմանէն Վասակայ և այսր իբրև պատմութիւն մէջ կը բերէ Եղիշէ՝ ըստ մեզ չունին ամենևին պատմական նկարագիր, ոչ միայն վասն զի ամենևին չեն նշմարուիր անգամ առ Փարպեցւոյն, այլ և մանաւանդ վասն զի են գործուածք

Հակառակ հանգամանաց անձանց որոց կ'ընծայուին։ Ապաքէն հակառակ էր պարտուց և պաշտաման ոչ Վարդանայ միայն, այլ և Վասակայ, աւերել, քանդել, հրով և սրով և գերութեամբ կորուսանել երկիր մի անմեղ բնակիչներով, զորս՝ պաշտպանել մանաւանդ պարտէին, մին՝ իբրև սպարապետ, և միւսն՝ իբրև մարզպան։ Զանմեղ տղայս զքարի հարկանել որչափ հակառակ էր բարուց Վարդանայ և զօրաց նորա։ Եթէ հաւատանք այս պատմութեանց Եղիշէի՝ հարկ է ասել, թէ պատերազմն Վարդանանց աշխարհաւերութեան կռիւ էր մանաւանդ քան հաւատոյ պաշտպանութեան։ Երկոքին կողմանք իբր թէ կը մրցէին կործանել զիւրեանց հայրենի երկիրն։ Յազկերտի պէս խիստ և ամբարտաւան թագաւորի ջանալ անմիտ փոփոխամտութեամբ իբրև ցնորեալ, մերթ կործանել և մերթ բարձրացունել, մերթ անարգել և մերթ գովել, մերթ հալածել և մերթ շնորհել ազատութիւն՝ չեն բնական կարգի դէպք։ Եղիշէ, որ ունի սաստիկ միտումն հրաշալի իմն և ի վեր քան զբնութիւն, կամ իբրև գաղտնիս նախախնամութեան երևցունել պատմութիւնը՝ կու տայ Վարդանայ աւերումներ գործել հրաշիւք, իսկ Վասակայ նոյն աւերումներն գործել առ չարութեան, և Յազկերտի կու տայ Փարաւոնի պէս խոստանալ արձակել զԻսրայէլ, և ապա խստանալ. –«Ես խստացուցի զսիրտն Փարաւոնի, զի ցուցից ի նա զզօրութիւն իմ»։

**39.** Ըստ Եղիշէի՝ Վասակ յաւել և այլ չարիս։ Թող զիւր կուսակից երէցներն, Զանգակ և Պետրոս, և սարկաւագ մի Սահակ անուն, որոց ձեռամբ հրովարտակներով, որպէս թէ ի կողմանէ Թագաւորին, կը խաբէր ժողովուրդը, թէ Թագաւորը շնորհած է քրիստոնէութիւնն, ուստի և աւելորդ էր ապստամբել և կամել ընդդիմանալ զինու՝—Նամականեօք ևս և այլովք հնարիւք ցրտացուց և հեռացուց նաև Հայոց բարեկամներն, Վրաց, Աղուանից, ևս և Աղձնեաց, որ յայնժամ ուրոյն իշխանութիւն էին։ Գտեալ ինքեան համամիտ զանուանակից իւր Վասակ, որ Յունաց բաժնին Մամիկոնեանց իշխան էր և սիրելի կայսեր՝ ի ձեռն նորա սուտ նամակներով խաբեց զՅոյնս, որք առ ատելութեան զոր ունէին ընդ Հայս, ինչպէս կամի ակնարկել Եղիշէ՝ ախորժելով անսացին թելադրութեանց նորա. Նոյնպէս իմա սահմանակից երկիրներուն համար, Տմորեաց, Կորդեաց, Արցախու և Խաղտեաց. զՀոնս միայն որ խոստացած էին օգնել Հայոց (Փարպ. ԼԵ, Եղիշ. էջ 134)՝ չկարաց շահել. բայց զնոսա ևս արգելեց, արքունի զօրօք բռնել տալով պահակներն, այսինքն Կովկասու գօտւոյն կիրճերն, ընդ որ միայն հնար էր անցանել Հոնաց յայսկոյս։ Վասակ հալածեց նաև ըստ Եղիշէի

իւր երկու եղբօրորդիներն։ Եղիշէ չյիշեր, թէ ո՛վ էին այս եղբօրորդիք Վասակայ, սակայն կը թուի թէ էին Բաբգէն և Բակուր Սիւնիք, որ գտնուեցան ընդ կապեալ նախարարս յետ պատերազմին (Եղիշ. էջ 343, և Փարպ. ԽԷ.)։ Երէցն, Բաբգէն, յետ դարձին նախարարաց, կը յիշուի ստէպ ի Փարպեցւոյն իբրև գործակից Վահանայ ի պատերազմունս նորա (Փարպ. ԿԸ. և այլուր).—«Բովանդակ զիւր աշխարհն ապստամբեցոյց յուրացութեանն... մանաւանդ սուտ երեցամբքն որովք գործէր զչարիսն. երէց մի Զանգակ անուն, երէց մի Պետրոս անուն (ըստ Փարպեցւոյն՝ աւելի անուամբ Երկաթի), սարկաւագ մի Սահակ անուն (ըստ Փարպեցւոյն՝ աւելի անուամբ Ձայնող), զորս յղէր առ անմեղ մարդիկ, խաբէր և պատրէր. սուրբ Աւետարանաւն երդնուին և տային, եթէ ի թագաւորէն շնորհեսցի ամենեցունց քրիստոնէութիւնդ։ Եւ այսպէս խորամանկութեամբ հանէին զբազումս ի սուրբ միաբանութենէն, ածէին և խառնէին ի գունդս ուրացողացն։... Եւ իբրև այս ամենայն չարիք յաջողեցան նմա՝ քակեաց և զմիաբանութիւն աշխարհին Վրաց ի Հայոց, և Աղուանիցն ոչ ետ յառաջ խաղալ. և զաշխարհն Աղձնեաց ըստ նմին օրինակի յետս կալաւ։ Գրեաց հրովարտակ և աշխարհին Յունաց, ցուցանելով նոցա այլ ընդ այլոյ ստութեամբ առ այր մի որոյ Վասակ անուանէր, յայնց Մամիկոնենից որ կան ի ծառայութեան Յունաց։ Եւ ի թշուառութեան ժամանակին այրն այն սպարապետ էր տորին Հայոց, և հաւատարիմ զօրացն Հոռոմոց ի սահմանին Պարսից. և արտաքոյ էր օրինացն Աստուծոյ գործովք իւրովք։ Եգիտ այս Վասակ զայն Վասակ իւր գործակից ի մեծամեծ չարիսն, զոր միաբանեցին երկոքեանն։ Գրէր և ցուցանէր հանապազորդ նա, իբր թէ ամենայն Հայք զկնի իւր միաբանեցին, և զնոյն գիր մեծաւ զգուշութեամբ ներքին Վասակն տայր տանել ի թագաւորանիստ քաղաքն կայսեր, մինչև զսուրբ եպիսկոպոսացն զմիտս լուծացոյց ի նոցանէ, և զամենայն զօրսն Յունաց յերկբայս արար յուխտէն։... Այն էին և կամք Յունաց աշխարհին, լսել զայն ախորժակութեամբ. այլ ի ձեռն նորա առաքել ևս ի նոյն յեղեալ տապալեցանն։ Դարձեալ հակառակութիւն ի բանս Եղիշէի։ Սակաւ մի յառաջ զՅոյնս յիշեց իբրև բարեկամս Հայոց, մինչև գրել առ նոսա խնդակցութեան թուղթ վասն յաջողութեանցն Վարդանայ (Եղիշ. էջ 139). հոս կ'ընէ զՅոյնս ատեցողս և չարակամս Հայոց։ «Սոյնպէս առնէր, կ'ըսէ, և ընդ ամենայն կողմանս ամրականաց աշխարհին, ի Տմորիսն և ի Կորդիսն, յԱրցախ և յԱղուանս, ի Վիրս և յաշխարհն Խաղտեաց, յղէր պնդէր զի ապնջականութեան ոք արժանի մի արասցէ։ Եւ ըստ մեծի չարութեան նորա՝ առաքել ևս ժա-

մանակն եբեր նմա զյաջողութիւն իրացն. զի ամենևին արտաքուստ օգնական ոք ոչ գտաւ գնդին Հայոց, բաց յայնց Հոնաց որոց բանս եդեալ էր։ Սակայն և վասն նոցա կուտեաց զբազում այրուձին Արեաց, արգել և փակեաց զդրունս ելին նոցա։... Եւ այսպէս շարժեաց և շփոթեաց զաշխարհն Հայոց՝ մինչև զբազում եղբարս հարազատս քակեաց ի միմեանց, ոչ եթող միաբան զհայր և զորդի, և ի մէջ խաղաղութեան արար խռովութիւն։ Եւ անդէն իսկ յիւրում աշխարհին եղբօրորդիք երկու էին նորա ի սուրբ ուխտին առաքինութեան. գրեաց և եցոյց վասն նոցա յարքունիս, և էառ իշխանութիւն ի վերայ կենաց նոցա, մերժեաց և եհան զնոսա յաշխարհէն, զի մի այլ դարձցին անդրէն» (Եղիշ. էջ 162—166)։

**40.** Թէ Վասակ երէցներու ձեռօք հրովարտակներ կը տարածէր ժողովուրդն հաւանեցունելու, թէ թագաւորը կը շնորհէր քրիստոնէութիւնը՝ զայս կը պատմէ և Փարպեցին, և է հաւանական։ Չէ սակայն հաւանական, ինչպէս արդէն դիտեցինք՝ թէ այն հրովարտակներն յանուն թագաւորին՝ էին սուտ, ձեւուած ողջ բովանդակ Վասակայ հալոցէն. անհնար էր Վասակայ մինչև յայն աստիճան յանդգնել։ Անտարակոյս Յազկերտ լսելով Հայոց միոյ մասին կասկածն և աղմուկը, թէ Յազկերտ կամէր ի սպառ ջնջել քրիստոնէութիւնը իւր երկիրներէն և ածել զքրիստոնեայս բռնի ի կրակապաշտութիւն՝ ջանաց հանդարտեցունել կասկածոտներն հրովարտակօք՝ թէ այն չէր նպատակ իւր։ Եղիշէ այս պարագան կ'ընծայէ փոփոխամտութեան Յազկերտի, որպէս թէ Յազկերտ պատգամաւորէ լսելով աւերածներն որ լինէին ի Հայս՝ յանկարծ կը փոխուէր, անհնարին հալածչութենէ կը դառնայ ի բարեկամութիւն, կը շնորհէ ազատութիւն անպայման. բայց իմանալով ի ձեռն դեսպանաց իւրոց զչէզոքութիւնն Մարկիանոսի՝ կը դառնայ անդրէն յիւր առաջին փսխածն։ Բայց գիտենք արտաքին պատմութենէ, թէ այնպիսի դեսպանագնացութիւն եղաւ յառաջագոյն առ Թէոդոսիւ. աւասիկ Յազկերտ գիտէր ի վաղուց, թէ Յոյնք չունէին կամք և ոչ կարողութիւն միջամտելու ընդդէմ իւր ի նպաստ արևելեան քրիստոնէից ըստ նորին իսկ Եղիշէի (էջ 125), որ Մարկիանոսի եւս կուտայ կանխել մտանել ի դաշն՝ չլինել օգնական Հայոց զինու և զօրու, ինչպէս արդէն յիշուեցաւ։ Ապա դնել նոր դեսպանութիւն ի կողմանէ Յազկերտի, ստուգելու համար Մարկիանոսի միտումը՝ չունի ամենևին տեղի, և հակառակ է նմին իսկ Եղիշէի։ Նոյնպէս թէ Յունաց բաժնին Հայք և ուրիշ դրացի քրիստոնեայ ժողովուրդք, որ էին ուրոյն իշխանութիւններ, բարեկամ կամ ազգակից Հայոց, նաև Յոյնք հրաժարեցան օգնելէ Հայոց՝ այս եւս ճշմարիտ

է. բայց չէ ճշմարիտ և ոչ հաւանական, թէ այս եղաւ ազդեցութեամբ կամ թելադրութեամբ Վասակայ, այլ վասն զի Յոյնք, ինչպէս տեսանք ի Փարպեցւոյն՝ վնասակար գտան ի նպաստ միոյ մասին Հայոց զինու զօրութեամբ միջամտելու վտանգը։ Նոյնպէս եւս ուրիշ դրացի իշխանութեանց համար։ Օգնութեան համար հրաւէրներ առ կայսր և առ այլս, ինչպէս տեսանք ի Փարպեցւոյն՝ գրուեցան յառաջագոյն իսկ ի կողմանէ Հայոց, և չընդունուեցան։ Իսկ զՎասակայ Մամիկոնենէ, ըստ Եղիշէի սպարապետէ Յունաց բաժնին Հայոց, իբրև կամակցէ Վասակայ՝ չենք գտներ ամենևին ակնարկութիւն առ Փարպեցւոյն։ Ինչ որ ունի Եղիշէ միայն, և կամ ունի էապէս տարբեր ի Փարպեցւոյն՝ զգուշալի է ըստ մեզ ընդունել իբրև ստուգիւ պատմական։ Եղիշէ, որոյ դիտումն է յամենայնի զՎասակ առնել յանցաւոր՝ ամենայն վնաս կամ չաջողութիւն կ'ընծայէ Վասակայ թելադրութեանց և հնարից։ Տեսնելով Եղիշէի այս միտումը և նորա պատմութեան վիպական ձևը՝ չենք կրնար առանց զգուշաւոր ընտրութեան առնուլ զնա իբրև պատմական աղբիւր, առանց գէթ հեռաւոր վկայութեան Փարպեցւոյն, առանց որոյ անհնար էր մեզ հանել Վարդանանց նշանաւոր անցից վրայ ճշմարիտ կամ գոնէ ճըշմարտութեան մօտ պատմութիւն։

Եղիշէ կը յաւելու միւս ևս կէտ, ոչինչ ընդհատ անհաւատալի քան զառաջինսն, այսինքն թէ Միհրներսեհ հազարապետ Արեաց տեսնելով Վասակայ հնարողութիւններն, Եղիշէի բառով «զՎասակայ խաբեբայ պատրանսն հայթայթանացն», թէպէտ ներքուստ կը պարսաւէր զնա՝ այլ արտաքուստ մեծարելով պատերազմին գործը կը յանձնէ Մշկան Նիւսալաւուրտ անուն զօրավարին, և ինքն կ'երթայ պատմել թագաւորին զանօրէնութիւնսն Վասակայ։ Թագաւորը լսելով կը զայրանայ, մինչև երդնուլ՝ տալ չարաչար սպանանել զնա յետ պատերազմին.—«Զայս ամենայն չարիս իբրև ետես ի նմա Միհրներսեհ՝ թէպէտև ի ներքոյ յոյժ դսրովէր զնա, այլ արտաքին դիմօք մեծարեաց զնա... և զամենայն զօրսն զօրագլխօքն հանդերձ յանձն առնէր առն միում յաւագացն որում անուն էր Մուշկան Նիւսալաւուրտ, և ինքն խաղայր գնայր յերկիրն արևելից, և յանդիման եղեալ մեծի թագաւորին՝ պատմէր զամենայն անցս իրացն, զիւր հնարաւոր իմաստութիւնն և զՎասակայ խաբեբայ պատրանսն հայթայթանացն. որպէս զառաջինն զիւր զամբարշտութիւնն կամեցաւ ծածկել այնու՝ զի քակեալ երկպառակեաց զգունդն Հայոց։ Իբրև լուաւ թագաւորն զայս ամենայն ի բերանոյ մեծ հազարապետին՝ դառնացաւ յանձն իւր, և ասէ անսուտ երդմամբ. Եթէ

ապրեսցի անօրէնն այն ի մեծ պատերազմէն՝ մեծաւ անարգանօք տամ ըմպել նմա զբաժակն դառնութեան մահու» (Եղիշ. էջ 168)։

**41.** Պատերազմին հանգամանաց վրայ միաբան են Եղիշէ և Փարպեցին. երկու կողման նախարարաց, ինչպէս նաև անկելոց անուններուն և թուոյն վրայ անգամ տարբերութիւնը դոյզն է։ Ըստ Փարպեցւոյն՝ Վասակայ կողման նախարարք էին եօթն. «Իշխանն Բագրատունեաց Տիրոց, իշխանն Խոռխոռունեաց Գադիշոյ, իշխանն Ապահունեաց Մանէճ, իշխանն Վահեւունեաց Գիւտ, իշխանն Պալունեաց Վարազշապուհ, իշխանն Աբեղենից (ըստ Եղիշէի՝ Գաբեղենից) Արտէն, իշխանն Ուրծայ Ներսեհ, և—կը յաւելու—այլք յոստանկաց, և սեպուհք ոմանք յիւրաքանչիւր տոհմէ»։ Եղիշէ կը դնէ երկու իշխան աւելի ի կողման Վասակայ. «Իշխանն Ռշտունեաց Արտակ», և «իշխանն Ակեաց Ընջուղ, և սեպուհ մի Ամատունեաց՝ Մանէն, և բազում և այլ ազատ մարդիկ զօր ոստանիկսն անուանեն, յարքունի տանէ», այն է ի ցեղէն Արշակունեաց։ Զիշխանս կողման Վարդանայ չյիշեր Փարպեցին։ Ըստ Եղիշէի՝ էին տասն և մի. Ներշապուհ Արծրունի, և Խորէն Խոռխոռունի, և ինքն սպարապետն, և Արտակ Պալունի, և Վահան Ամատունի, և գունդն Վահեւունեաց, և Թաթուլ Դիմաքսեան, և Արշաւիր Արշարունի, և Շմաւոն Անձեւացի, և Տաճատ Գնթունի, և Ատոմ Գնունի, և Խոսրով Գաբեղեան, և Կարէն Սահառունի, և Համայեակ Դիմաքսեան, և միւս ևս այլ Գազրիկ Դիմաքսեան, և Ներսեհ Քաջբերունի, և Փարսման Մանդակունի, և Արսէն Ընձայացի, և Այրուկ Սզկունի, և Վրէն Տաշրացի, և Ապրսամ Արծրունեացն, և Շահ ախոռապետն արքունի, և Խուրս Սրուանձտեանց». և կը յաւելու, «և Քաղեանքն (ցեղ անծանօթ), և Ակէացիքն, և Տրպատունիք (նոյնպէս անյայտ), և զօրքն Ռշտունեաց և ամենայն գործակալքն արքունի (պաշտօնեայք տէրութեան), իւրաքանչիւր զօրօքն հանդերձ»։ Այսպէս իշխանք կողմանն Վարդանայ, ըստ Եղիշէի, երեքպատիկ աւելի էին քան զՎասակայն։

Երկու կողման իշխանաց ցեղերուն անուններէն կը տեսնուի, թէ նոյն իսկ ցեղք բաժանեալ էին յինքեանս. զորօրինակ Խոռխոռունիներէն և Պալունիներէն երկու կողման հետ ևս կը յիշուին իշխաններ, ինչպէս Գադիշոյ Խոռխոռունի ի կողման Վասակայ, և Խորէն նոյն ցեղէն՝ ի կողման Վարդանայ. Վարազշապուհ Պալունի ընդ Վասակայ, և Արտակ նոյն ցեղէն՝ ընդ Վարդանայ։ Դարձեալ մի և նոյն ցեղէն կը յիշուին երկու կամ երեք իշխան ի նմին կողման. զորօրինակ Արծրունիներէն Ներշապուհ և Ապրսամ ի կողման Վարդանայ, Դիմաքսեաններէն երեք—Թաթուլ, Համայեակ և

Գաղրիկ՝ դարձեալ ի կողման Վարդանայ․ Թերևս սոքա նոյն ցեղէ այլևայլ ընտանեաց կամ գաւառի գլխաւորներ էին։ Դարձեալ կը յիշուին գունդք կամ զօրք առանց իշխանի․ այսպէս կը յիշուին Եղիշէէ գունդն Վահևունեաց և զօրքն Ոշտունեաց ի կողման Վարդանայ, մինչ այս ցեղերուն իշխաններն, Գիւտ Վահևունի և Արտակ Ոշտունի, էին ի կողման Վասակայ․ Թերևս այս ցեղերուն զօրքը կամ մի մասն նոցա զատուելով իրենց իշխանէն յարած էին հակառակ կողմը։ Նոյնպէս չէ յայտ, թէ ինչ կը նշանակէ «գործակալ (այլինքն պաշտօնեայ) արքունի», մինչ թագաւորութիւնը դադրած էր, ուստի և չկային արքունիք․ այսու կ'իմացուին թերևս Պարսից կողմանէ դրուած կամ հաստատուած հայ պաշտօնատարք, այսինքն վարչութեան այլևայլ ճիւղերուն վերակացուներ։ Իսկ ոստանիկ անուամբ հաւանականապէս կ'իմացուին Արշակունիք։

Իսկ անկեալք պատերազմին մէջ, ըստ Փարպեցւոյն՝ իշխաններն էին, հանդերձ Վարդանաւ ինն․—«Որք ի ժամուն երանելի և երկնաւոր կոչմանն (մարտիրոսութեան) եղեն արժանաւորք ընդ սրբոյն Վարդանայ և նահատակեցան՝ են այսոքիկ․ յազգէն Խորխոռունեաց երանելին Խորէն, յազգէն Պալունեաց երանելի սեպուհն Արտակ, յազգէն Գնունեաց երանելին Տաճատ, յազգէն Դիմաքսենից երանելին Հմայեակ, յազգէն Քաջբերունեաց երանելին Ներսեհ, յազգէն Գնունեաց երանելին Վահան, յազգէն Ընծայնւոյ երանելին Արսէն, յազգէն Սրուանձտայ երանելին Գարեգին»։ Նոյնչափ կը դնէ և Եղիշէ, յիշելով իւրաքանչիւրին հետ անկելոց թիւը․—«Եւ այս անուանք են քաջ նահատակացն որ անդէն ի տեղւոջն կատարեցան․ յազգէն Մամիկոնէից քաջն Վարդան հարիւր երեսուն և երեք արամբք, յազգէն Խորխոռունեաց Խորէնն կորովի իննևտասն արամբք, յազգէն Պալունեաց արին Արտակ յիսուն և ութն արամբք, յազգէն Գնթունեաց զարմանալին Տաճատ ինն և տասն արամբք, յազգէն Դիմաքսենից իմաստունն Հմայեակ քսան և երկու արամբք, յազգէն Քաջբերունեաց հրաշակերտն Ներսեհ ութն արամբք, յազգէն Գնունեաց մանուկն Վահան երիւք արամբք, յազգէն Ընծայնոց արդարն Արսէն ութն արամբք, յազգէն Սրուանձտայ յառաջադէմն Գարեգին երկու հարազատօքն և ութուտասն արամբք։

Գալով նահատակելոց թուոյն՝ երկու պատմիչք ևս չեն անմիաբան։ Եղիշէ կը դնէ 287 այր անկեալ ի ճակատու հանդերձ 9 նախարարօք, և այլ ևս 740 այր սպանեալ նոյն օրը, առանց յայտնելու թէ զիարդ․—«Այս երկերիւր ութսուն և ութն նահատակք, ընդ նմին և մեծամեծ նախարարքն անդէն ի տեղւոջն կատարեցան։... Թող զայս երկերիւր ութսուն և ութնս՝ այլ ևս ութն

*հարիւր և քառասուն այր... և միահամուռ լինի ամենայն հազար և երեսուն և վեց» (Եղիշ. էջ 211)։ Փարպեցին կը դնէ պատերազմին մէջ ինկած 276 այր հանդերձ նախարարօք, և 750 այր՝ զոր ամրոցներէն իջեցունելով սպանին.—«Նաա խուզիւ և բազում քըննութեամբ հարցեալ և ուսաք զնահատակելոցն թիւս, որք ի տեղւոջ պատերազմին պսակեցան ընդ աւագ նախարարսն՝ երկերիւր եօթանասուն և վեց այր։ Եւ զորս յամրոցացն իջուցեալ սպանին սրով և կամ փղօք կոխեցին՝ եօթն հարիւր և յիսուն այր. որք լինին միահամուռ հազար երեսուն և վեց այր» (Փարպ. ԼԹ.)։ Եղիշէի թիւերն հաշուելով, 287+9+740՝ կը գտնենք արդարև 1036. Փարպեցւոյն է միով պակաս, 276+9+750=1035, տարբերութիւն՝ որ է արդարև չնչին։ Իսկ հակառակ կողման կորուստն էր ըստ Փարպեցւոյն 3544.—«Իսկ ի զօրացն Պարսից որք անկան ի պատերազմին յաւուրն յայնմիկ՝ զոր ստուգիւ համարեալ պատմեցին մեզ տեղեկացեալք ի զօրագլխացն Պարսից, երեք հազար հինգ հարիւր քառասուն և չորս այր»։ Այսպէս ունի և Եղիշէ. «Իսկ ի կողմանէ ուրացելոցն (իմա Վասակեանց, զՊարսիկսն ևս ի միասին հաշուելով) անկանէր յայնմ աւուր երեք հազար հինգ հարիւր քառասուն և չորք այր»։ «Ինն այր, կը յաւելու Եղիշէ, ի մեծ պատուաւորացն էր, և կարի յոյժ ի խոր խոցեցաւ Մուշկան Նիւսալաւուրտ»։*

*Երկոքին պատմիչք միաբան կը թուին նաև պատերազմին տեղւոյն վրայ, որ էր Արտազ, հին անուամբ Շաւարշան (Խոր. Բ. ԼԴ.), գաւառ Վասպուրականի, ուր առաջին անգամ և այս պատերազմին առթիւ կը յիշուին ի Փարպեցւոյն և յԵղիշէէ Աւարայր և Տըղմուտ, առաջինն գիւղ, որոյ մօտ ընտրած էին Պարսիկք իրենց բանակատեղին, վասն զի տեղին էր ամուր և ապահով, շուրջ փակեալ—«շրջափակ»—թերևս Երասխ և Տղմուտ գետերէն (վերջինն՝ աջակողմեան վտակ Երասխայ), ըստ ակնարկելոյ Փարպեցւոյն.—«Եկեալ հասանէին գունդն Պարսից ի գաւառն Արտազ, հուպ ի գեւղն որ կոչի Աւարայր, ի շրջափակ տեղի Տղմուտ դաշտին, զոր ընտրեաց (զօրավարն Պարսից) յաղագս երկիւղի զօրացն Հայոց, ամուր ապաստանի անձանց համարէին պատսպարանս, և ի միջի նորա ածեալ ղակիշ բանակէին» (Փարպ. ԼԸ.)։ Դաշտը զոր Փարպեցին հոս կ՚անուանէ Տղմուտ՝ Եղիշէ կը կոչէ Աւարայրի. «Նաև դաշտն Աւարայրի պայծառացեալ ծաղկալից լինի, ոչ յանձրևաբեր ամպոց, այլ ի սուրբ և յարիւնաբուխ վկայից»։ Սակայն հաւանական է, թէ Տղմուտ էր գետ, և Աւարայր՝ գիւղ նոյն դաշտին մէջ, ուստի և դաշտը կրնար կոչուիլ թէ միոյն և թէ միւսոյն անուամբ։*

Փարպեցին որոշ կը դնէ պատերազմին նախընթաց օրն, այն է Պենտեկոստէի ուրբաթը։ Հայոց զօրքն, ըստ Փարպեցւոյն, գալով կը բանակին այն աւուր երեկոյն Պարսից զօրուն մօտ, առ եզերբ Տղմուտ գետոյն ըստ Եղիշէի։ Յետ կատարելոյ երեկոյեան պաշտօնը՝ կ'ընթրեն։ Ողջոյն գիշերը կ'անցնի աղօթիւք և սաղմոսերգութեամբ, և այգուն մօտ կը հաղորդուի զօրքը։

**42.** Հին պատմչաց սովորութիւն էր յորդորանաց երկայն ճառեր դնել ի բերան զօրապետաց. զնոյն կը գտնենք առ Փարպեցւոյն և առ Եղիշէի։ Ոչ Վարդան միայն, այլ և Յովսէփ կաթողիկոս և մանաւանդ Ղևոնդ երէց կը խօսին խրատ առ զօրն։ Փարպեցին կ'անցնի համառօտիւ միայն, առանց յաւելլոյ բազում ինչ իւր կողմանէ, ասելով միայն, թէ «Ղևոնդ երէց հանդերձ երանելեաւն Յովսեփաւ բազում բանիւք հոգեղինօք քաջալերէր զիւրաքանչիւր ոք ի մեծամեծ աւագանւոյն Հայոց զամենայն գիշերն»։ Փարպեցին այս առթիւ կը պատմէ սքանչելիս ինչ զՂևոնդայ, որպէս թէ անգամ մը, մինչ սուրբն ի քուն էր՝ Մեսրոպ և երկու աշակերտք նորա Կորիւն և Արձան տեսին լոյս փայլատակեալ զնովաւ, և իմացան թէ վախճան նորա լինելոց էր մարտիրոսութեամբ. — «Յառաջագոյն ժամանակաւ կալով ի քուն սրբոյն՝ այրն Աստուծոյ Մաշթոց վարդապետն նորին հանդերձ աշակերտօք իւրովք երանելեաւն Կորեամբ և Արձանաւ տեսանէին արթնութեամբ՝ ճառագայթեալ շուրջ զնովաւ լոյս սաստիկ, որք անդէն և անդ ծանեան երանելի արքն սուրբք հոգւով զվախճան սրբոյն, թէ նահատակութեամբ կատարի. զոր թէպէտև նմա ոչ յայտնեցին սքանչելագործութեան զտեսութիւնն, կը յաւելու Փարպեցին, սակայն ի բազում շշնջելն պատմեալ հռչակեցաւ բան երևմանս այսորիկ» (Փարպ. ԼԸ.)։

Եղիշէ կը դնէ Վարդանայ և Ղևոնդայ բերնէն երկայն ճառեր, յորս գան ի մէջ Նոյ, Աբրահամ, Մովսէս, Յեսու, Գեդէոն, Յեփթայէ, Դաւիթ. Մակաբայեցւոց ամբողջ պատմութիւնը կը համառօտուի, իսկ Լուսաւորչին յիշատակութիւնը չիք ամենևին. մինչ ըստ Փարպեցւոյն՝ Ղևոնդ կը յիշեցունէր մանաւանդ, «զանպատումն զհամբերութիւն սրբոյն Գրիգորի»։ Չիք տարակոյս թէ այս ճառք, մանաւանդ Եղիշէին, չեն հարազատ բանք նոցա՝ որոց կ'ընծայուին, այլ մատենագրին կողմանէ ըստ պատշաճի նիւթոյն յօրինեալ քարոզներ։

Նոյն բան է պատերազմին երկայն նկարագրին համար, զոր կը յօրինէ Եղիշէ իւր կողմանէ, և զոր բերած ենք այլուր։ Ոմանք բուն և հարազատ համարելով այն նկարագիրը՝ կարծեցին թէ Եղիշէ էր ատենադպիր Վարդանայ և ականատես այն պատերազմին։

Փարպեցին առանց ջանալու նկարագրել կռիւը՝ կը պատմէ միայն, թէ ինչպէս յարդարեց Վարդան ճակատը, որ ընդհանրապէս կը բաժնուէր երեք թեւ կամ առաջ, և ո՛յք էին իւրաքանչիւր թեւի զօրագլուխք, ինչպէս արդէն տեսանք։

**43.** Եղիշէ Վարդանանց թիւը կը հանէ մինչև վաթսուն հազար և աւելի ևս, առանց յիշելու թշնամւոյն թիւը, որ հարկաւ էր, եթէ ոչ կրկին՝ գէթ ոչ կարի պակաս։ Առ Փարպեցւոյն չէք ամենևին յիշատակութիւն թուոյ։ Ստոյգ է, թէ Հայք ոչ առ թագաւորութեամբ միայն, այլև յետոյ ունէին պատրաստ բանակ արքունի անուամբ ընդ ձեռամբ սպարապետին, ընդհանրապէս քառասուն հազար, որ նախարարաց առանձին զօրօք թերևս կը հասնէր մինչև յիսուն, վաթսուն, դուն ուրեք մինչև ութսուն հազար։ Բայց յայսմ մասին ստոյգ ինչ ասել հնար չէ։ Մեզ չափազանց կը թուի Եղիշէի թիւն, գէթ այն ժամանակին և պարագայից համար, մինչ երկու բաժնուած էր ազգը։

Այսչափ ինչ Վարդանանց վրայ, որոց պատմութիւնն համառօտեցինք երկու պատմիչներէն, ի Փարպեցւոյն և Եղիշէէ, ինչպէս կարծենք՝ չթողլով ինչ պակաս, նախամեծար առնլով միշտ զառաջինն քան զերկրորդն, որոյ վիպասանական գոյնը և դիպաց, զոր յառաջ կը բերէ, անսովոր բնութիւնը՝ չեն տար թոյլ ընդունել զնա իբրև պատմական աղբիւր։ Գանք այժմ պատմութեան յաջորդ մասին։



## ԳԼՈՒԽ Գ.

## ԱՆՑՔ ՈՐ ԶԿՆԻ։

*1. Ատրորմիզդ մարզպան: 2. Հմայեակ եղբայր Վարդանայ եւ որք ընդ նմա: 3. Ձերբակալութիւն եւ առաքումն նախարարաց ի դուռն: 4. Զարտուղութիւն մի ի պատմութեան Փարպեցւոյն: 5. Վասակ ի դրան: 6. Հարցափորձ քահանայից: 7. Ատեան առաջի թագաւորին. Արշաւիր Կամսարական. Անքատանութիւն զՎասակայ: 8. Փարպեցւոյն այս պատմութեան վրայ դիտողութիւն: 9. Տարբերութիւնք պատմութեան Փարպեցւոյն եւ Եղիշէի: 10. Վարդանանց պատմութեան բուն պատմական մասն ըստ անաչառ քննութեան: 11. Նահատակութիւն Ղեւոնդեանց. Աքսոր նախարարաց: 12. Պատմութիւն Ղեւոնդեանց է զէթ ըստ ծնւոյն վէպ (վկայաբանութիւն): 13. Աքսորեալ նախարարք: 14. Ղեւոնդեանք: 15. Սպանումն քահանայից: 16. Կարծեցեալ աղբիւր պատմութեան Ղեւոնդեանց. Խուժիկ (անուն սիտակ): 17. Նոյն պատմութիւն ըստ Եղիշէի: 18. Դիտողութիւն Ղեւոնդեանց վկայաբանութեան վրայ: 19. Կէս վկայաբանական պատմութիւն Աբրահամու եւ Խորենայ: 20. Տարբերութիւն Եղիշէի ի Փարպեցւոյն յայսմ եւս:*

**1.** Յետ պատերազմին, դարձեալ ըստ Փարպեցւոյն, որ յայսմ մասին ևս է պարզ՝ զօրավարն Պարսից Մուշկան զելս պատերազմին կ'իմացունէ Յազկերտի. Մուշկան կը կոչուի յետս, և կը կարգի մարզպան Ատրորմիզդ ոմն, որ թողութեան հրովարտակներ հանելով առ փախստեայս՝ կը հրաւիրէ զիւրաքանչիւր յիւր տուն և յարարս, և վարել անխափան զքրիստոնէութիւնն.—«Յետ վճարելոյ այսպէս գործոյ պատերազմին՝ հրովարտակ առնէր Մուշկան Նիւսալաւուրտ առ թագաւորն Արեաց Յազկերտ, և զելս գործոյ պատերազմին գիտել տայր, գրեալ զյաղթութեանն աւետիս, և յանուանէ զհամար անկելոցն յերկոցունց կողմանց։... Զոր լուեալ արքայի Յազկերտի՝ պատասխանի առնել հրամայէր հրովարտակին, և զՄուշկան Նիւսալաւուրտ հանդերձ դնդաւն ի դուռն կոչէր։ Եւ զԱտրորմիզդ ոմն անուն մարզպան հրամայէր թողուլ, որում յանձն

առնէր հրովարտակով զմարդիկն Հայոց չընդոստացանել, այլ սիրով նուաճել, և զպաշտօն քրիստոնէութեանն համարձակապէս առնել ամենեցուն» (Փարպ. Ի.)։ Զայնու ժամանակաւ եղբայրն Վարդանայ Համայեակ դառնալով ի Յունաց ձեռնունայն՝ կը գտնուէր Հայաստանի հիւսիսային արևմտեան կողմը մօտ ի Տայս, և բազումք ի փախստէից ժողոված էին առ նմա, թիկունք ունենալով ինքեանց Պարխար լեռը։ Պարսիկք որ հետամուտ էին փախստէից, գալով Համայեկայ վրայ՝ կու տան պատերազմ. Համայեակ կ'սպանուի, և որ ընդ նմա էին՝ կը ցրուին։ Ատրորմիզդ սուտ խոստումներով կ'որսայ փախստականներն որ ամուր տեղեր ապաւինած էին, և կը ղրկէ երևելիներն, որ մասնակից գտնուած էին ապստամբութեան՝ ի դուռն, նոյնպէս կղերէն երևելիներ, զնոսա մանաւանդ որ ատրուշան այրած էին՝ իբրև յանցաւոր, քանզի քրէական յանցանք համարուած էր այս ըստ օրինաց Պարսից։ Կ'երթայ նաև Վասակ ինքնակամ։

2. «Սա (Ատրորմիզդ) և ի վերայ ժողովելոցն առ երանելին Համայեակ յամուրս Տայոց գունդ կազմէր այրընտիր բազմութեամբ ի Պարսից և ի Սիւնեաց. և յերկուս բաժանեալ զգունդն՝ կարգէր նոցա զօրագլուխս զԱրտէն Գաբեղեան և զՎարազշապուհ Պալունի։ Քանզի բազմութիւն փախստէիցն Հայոց, նախարարք և սեպուհք, ոստանիկք և ռամիկք, դիմեալք յերկիրն Տայոց՝ ժողովէին առ Համայեակ եղբայր սրբոյ զօրավարին Վարդանայ։... Տանուտեարքն Հայոց և նախարարք որ երթեալն էին յաշխարհն Յունաց խնդրել զօրս ի թագաւորէն... իբրև տեսին թէ ոչինչ օգտեցան յաղագս որոյ աշխատ եղեն՝ դարձան,... և ոչ ժամանեալ ի գործ ժամու պատերազմին՝ առ վայր մի առ լերամբն որ կոչի Պարխար, մերձ առ սահմանակցութիւնն Խաղտեաց, ամրագոյն տեղի մի գտեալ դադարեցին։ Յորոց վերայ տեղեակ առաջնորդօք եկեալ (Պարսից) զցայգն՝ անկանէին ի վերայ Համայեկայ Մամիկոնէի, ի գեւղն որ անուանի Որջնհաղ, ի գաւառին Տայոց, քանզի ի ժամուն երթեալ էին յամրոցաց լերինն Պարխարայ։... Անդ զկատարելութեան պսակն ընդունէր երանելի սեպուհն Համայեակ։... Իսկ զօրն ուխտապահացն (կուսակցութեանն Վարդանայ) որք առ սրբոյն Համայեկի ժողովեալ էին՝... զարհուրեալք անդէն ի վեր ի լեառնն դառնային ի Պարխար։

3. «Խորհուրդ ի մէջ առեալ (Ատրորմզդի մարզպանին), թէ որպէս հնարեսցին որսալ զարսն փախստականս առանց Արեաց կռուելոյ՝... առաքէր առ նոսա ի բանէն արքային Յազկերտի, և երդնոյր նոցա դաւով, թէ ոչ զոք սպանանեմք ի ձէնջ, և ոչ զտէրութիւնդ և զպատիւ հանեմք յումեքէ։ Եւ այսպէս նենգով նուա-

ճեալ զմարդիկն՝ կալաւ զամենեսեան և տայր խաղացուցանել ի դուռն Արեաց. զիշխանն մեծ Արծրունեաց զՆերշապուհ, և զիշխանն տանն Վանանդայ, և զիշխանն տանն Արշարունեաց զԱրշաւիր, և զիշխանն տանն Անձևացեաց զՇմաւոն, և զիշխանն տանն Ամատունեաց զՎահանն, և զիշխանն Գնթունեաց, և զիշխանն Աշոցաց, և զիշխանն Առաւեղենից զՓափաք, և զիշխանն Տաշրայ զՎրէն, և զիշխանն Արծրունեաց զԱպրսամ, և զայլսն ի տանուտերացն և յաւագ սեպհացն, խաղացուցանէին ի դուռն Թագաւորին Յազկերտի։... Իսկ ի սուրբ քահանայիցն Հայոց, զորս կալեալ էր նախագոյն և եդեալ ի տեղիս տեղիս յամուրս բերդիցն Սիւնեաց՝ զսուրբ երէցն Յովսէփ որ զկաթողիկոսութեանն ունէր զաթոռ ի ժամուն, և զտէր Ղեւոնդն, և զքահանայսն Արածայ զտէր Սամուէլ և զտէր Աբրահամ, ընդ որս կալեալ տանէին և զսուրբ եպիսկոպոսն Ռշտունեաց զտէր Սահակ, և զդրան երէցն իշխանին Արծրունեաց Ներշապհոյ զտէր Մուշէ, և զսուրբ երէցն Արշէն, և զսուրբ սարկաւագն զՔաջաջ։ Բայց զսուրբ եպիսկոպոսն Բասենոյ զտէր Թաթիկ՝ էր յառաջագոյն տուեալ տանել զօրագլխացն Պարսից ի Խուժաստան» (Անդ)։ Ըստ Փարպեցւոյն՝ վերջինս այս Թաթիկ տարուած էր ի Խուժաստան «ըստ քսելոյ իշխանին Սիւնեաց, և անդ խիստ կապանօք պահէր»։ Զլայտներ սակայն Փարպեցին, թէ ինչ էր պատճառ Վասակայ այս մասնաւոր վրէժուն յիշեալ եպիսկոպոսին դէմ, մինչև տալ աքսորել զնա ի Խուժաստան։ Եթէ պարտ է հաւատալ Փարպեցւոյն՝ Վասակ «տայր խաղացուցանել և զտղայսն զոր կալեալ էր իւր ի տոհմէն Մամիկոնէից և Կամսարականաց, և յայլ տոհմէ իշխանացն Հայոց, կարծեցեալ առնել մեծապէս սպաս Թագաւորին Յազկերտի և ամենայն աշխարհին Արեաց, և առնուլ զպատիւ Թագաւորութեան և զպարգևս»։ Քանի մը տխեղծ մանուկներ ղրկել առ Յազկերտ չենք գիտեր ինչ մեծ ծառայութիւն էր նմա և Արեաց աշխարհին, մինչև յուսալ Վասակայ ընդունել ընդ այնր վարձ Հայոց Թագաւորութիւնը, որ այնպէս հակառակ էր Սասանեանց քաղաքականութեան, և զոր մեծամեծ պատերազմներով հազիւ կարող եղած էին ջնջել։ Փարպեցին կը կրկնէ Վասակայ Թագաւորելու ակնկալութիւնն ի ստորև. «Եւ ինքն, ասէ, չու արարեալ սաստիկ կազմութեամբ և ուժգին աղխիւք երթայր առ Թագաւորն Պարսից, և զկարծեցեալ խաբէական զիւր միամտութիւնն ծանուցեալ Թագաւորին և աւագանւոյն Արեաց՝ առնուլ վարձս ըստ մոլեկան խորհելոյն իւրոյ զԹագաւորութիւնն իսկ Հայոց. ապա թէ յայնմանէ վրիպեալ ինչ, ասէ, գտանիմ՝ համայն զայլն ամենայն զպատիւ և զգահս առանց ամենայն երկբայութեան և յերկուանալոյ գտանեմ,

և իմ են»։ Ուստի գիտէր արդեօք Փարպեցին Վասակայ այս խորհուրդը. զարմանալին այն է, որ ըստ նմին իսկ Փարպեցւոյն՝ Վասակ բաց ի թագաւորի տիտղոսէն ունէր արդէն ամէն պատիւ.— «բաց ի պատուոյ թագաւորացն այլ ոչինչ ի պատուոյ արքունի պիտոյ էր զոր ոչ ունէր»։

4. Փարպեցին ի պատմելն զչուն քահանայից կապելոց և Վասակայ, զարտուղելով իւր պատմութեան կարգէն՝ կը պատմէ, թէ ինչպէս Վասակ կը հանդիպի ի ճանապարհին կապեալ քահանայից, կ'ողջունէ զնոսա, կը խօսի քաղցրութեամբ, կը հրաւիրէ զնոսա ի միասին ճաշել յօթևանին։ Նոքա կը հարցունեն նմա, թէ ո՞ւր կ'երթայ և ինչ նպատակաւ, և նա կը պատասխանէ, թէ առ թագաւորն առնուլ վարձ մեծ փոխարէն իւր վաստակոց. բայց կը յանդիմանուի ի Ս. Ղևոնդէ, որ և կը մարգարէանայ նմա, թէ ողջ գլխով պիտի չդառնար ի Հայս.—«Ձմիջոցաւ ճանապարհին ուր զսուրբ քահանայսն տանէին կապեալս, նստուցեալս ի վերայ ջորւոյ՝ բազմութիւն չուելոցն հասին նահատակացն Քրիստոսի։ Եւ նոցա հարցեալ թէ ո՞յր է բազմութիւնս՝ լուան ի մարդկանէ, թէ Սիւնեաց տեառն է։... Այն ինչ կատարեալ նոցա զհարցուածսն՝ եկեալ հասանէր առ նոսա Վասակ Սիւնեաց տէր, և տեղեկացեալ ի նոցանէ՝ վաղվաղակի իջանէր յերիվարէն և ողջունէր զսուրբսն։ Որոց ոչինչ բնաւ կարծեցուցեալ թշնամութիւն ընդ նմա՝ յոյժ խնդալից սիրով տեսանէին զնա, մանաւանդ սուրբն Ղևոնդ լրջմտութեամբ խօսէր երկարս ընդ Վասակայ Սիւնեաց իշխանին։ Յետ կատարման խօսիցն՝ Սիւնեաց տէրն աղաչեաց զսուրբսն ճաշել ընդ նմա յօթևանին։ Եւ յառաջեալ սակաւ մի Վասակայ ի նոցանէ՝ ձայն զկնի եդեալ սրբոյն Ղևոնդի կոչէր զնա պատուոյն անուամբ մեծաձայն. Սիւնեա՛ց տէր, Սիւնեա՛ց տէր։ Եւ նորա յօժարապէս պատասխանի արարեալ, Տէ՛րք, զի՞նչ ասէք։ Եւ սրբոյն ասացեալ. Զամենայն ինչ մեր ասացեալ ընդ քեզ՝ զպիտոյսն և զառաւել օգտակարսն մոռացաք հարցանել, թէ ո՞ւր երթաս։ Եւ նենգաւորին Վասակայ լուեալ զայս և ի մեծ տրտմութիւն ընկղմեալ՝ ասէր զարմացմամբ. Առ տէրն իմ երթամ, գտանել ի նմանէ ըստ արժանի մեծ վաստակոցն զհատուցումն մեծ։ Եւ սրբոյն Ղևոնդի պատասխանի տուեալ ասէ. Կարծեցուցանէ զքեզ դևդ, որ պատրեալ սադրեաց զքեզ նենգել սուրբ Աւետարանին ուխտի, թէ արդ միայն թագաւորութեամբ աշխարհին Հայոց կարեն Արիք տալ քեզ ըստ արժանի վաստակոց քոց հատուցումն. այլ և ոչ մի ինչ է որ կարեն տալ քեզ փոխարէնս. բայց թէ արդարև դու կենդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս՝ ապա ընդ իս Տեառն Աստուծոյ չէ խօսե-

ցեալ։ Եւ զայս լուեալ Ննդաւոր իշխանին Վասակայ՝ վհատեալ խզեցաւ ամենայն սնոտի յոյսն իւր, և անդէն ծանեաւ զբեկումն անձին իւրոյ, որ մերձ ընդ մերձ հասանելոցն էր ի վերայ նորա։ Քանզի ոչ վրիպէր բան սրբոյն, մինչև կատարէր ամենայն» (Փարպ. ԽԲ.)։ Չէ անհաւանական, թէ կապեալ քահանայք և Վասակ հանդիպեցան միմեանց ի ճանապարհին, թերևս խօսեցան ևս, մանաւանդ քահանայք, «ոչինչ բնաւ կարծեցուցեալ թշնամութիւն ընդ նմա», որպէս ասէ ինքն իսկ Փարպեցին. սակայն Վասակայ հրաւիրելն ի ճաշ զնոսա, որ իբրև յանցաւոր կը տարուէին կապեալ, անշուշտ պարսիկ ոստիկանօք. Ղևոնդի նախ «լրջմտութեամբ և երկար» խօսելն ընդ Վասակայ, և ապա, որպէս թէ մոռացած էր, գոչելն զկնի, թէ «Ո՞ւր երթաս», և յանդիմանելն զնա իբրև դիւամոլ. Վասակայ տրտմութիւնն և երկիւղն այս հարցման վրայ, և անմիտ պատասխանը, թէ «Երթամ գտանել հատուցումն մեծ ըստ արժանի մեծ վաստակոցս», և մանաւանդ Ղևոնդի գուշակելն Վասակայ գլխատումն, մարգարէական խրոխտ ոճով—«Եթէ դու կենդանութեամբ զգլուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս, ապա Տեառն Աստուծոյ ընդ իս չէ խօսեցեալ»՝ -կը թուին ստեղծուած ըստ յարմարութեան, քան ճշմարտիւ եղած։ Դիտելու արժանի է, որ Եղիշէ չգիտեր ո՛չ զայս հանդիպումն զճանապարհային, և ոչ զառաքումն տղայոց։

**5.** Զիարդ և իցէ՝ Վասակ կը հասնի ի դուռն, կ'երթայ երևել մեծամեծաց և թագաւորին, որ կ'ընդունէին զնա պատուով ի վերին երեսս, որպէս ասէ Փարպեցին, քանզի գիտէին զնա պատճառ այնչափ չարեաց.—«Հասեալ ի դուռն Ննդաւոր իշխանն Սիւնեաց, և տեսեալ նախ զաւագանի դրանն արքունի՝ մտանէր և առաջի թագաւորին Յազկերտի։ Ընդունէին զնա թագաւորն և ամենայն մեծամեծքն արքունի առ վայր մի մեծարանօք և շքեղութեամբ։ Թէպէտև գիտէին զվնաս նորա՝ սակայն ոչինչ զգացուցեալ տային գիտել նմա, այլ լռութեամբ որպէս զանգէտս պատուէին զնա՝ որպէս զհայր հաւատարիմ և բարեգործ»։

**6.** Ըստ Փարպեցւոյն՝ յետոյ աւրեմն զկնի Վասակայ կը հասնին կապեալ քահանայք և նախարարք։ Միհրներսեհ հազարապետ կը կոչէ ի հարցափորձ զքահանայս, որ զկրակ սպանած, այսինքն մարած, և ատրուշան աւերած էին, գործ՝ որ ըստ օրինաց Պարսից գլխապարտութեան արժանի էր. և լսելով ի նոցանէ խրոխտ պատասխաններ, նա մանաւանդ թշնամանք ևս առ թագաւորն՝ հրամայեց, ասէ Փարպեցին, երկաթով ծեծել զբերանս նոցա.—«Անօրէն Հազարապետն Արեաց հրամայէր նախ զքահանայսն ածել զառա-

ջեաւ, և հարցանէր զսուրբ երէցն Արածայ զՍամուէլ և զնորին զհօգւոյ որդին զսուրբ սարկաւագն զԱբրահամ, որոյ զկիրակն անցուցեալ էր զԱրտաշատու։ Որպիսի՜ համարձակութեամբ և ո՜յր հրամանաւ իշխեցէք գործել զայդպիսի մահապարտութեան գործ, և ոչ ածէք զմտաւ զահ թագաւորաց և զերկիւղ իշխանաց, և այնպիսի մեծ կրակի իշխեցէք ձգել զձեռս ձեր։... Եւ լուեալ զայս սրբոցն երկոցունց, տեառն Սամուէլի և Աբրահամայ՝ ետուն պատասխանի միաբանութեամբ, էր ինչ որ սուգախօսութեամբ, և էր որ եպերանօք։... Ըստ սմին օրինակի պատուհասեալ հարցանէին և զայլ սուրբ քահանայսն Աստուծոյ, զսուրբն Յովսէփ զկաթողիկոսն Հայոց, և զսուրբ եպիսկոպոսն Ռշտունեաց զտէր Սահակ, և զամենասուրբ երէցն զտէր Ղևոնդ, և զայլ սուրբ քահանայսն, որք էին ընդ նոսա ի հարցմանն—զսուրբն Մուշէ Աղբակացի, որ էր գրան երէց իշխանին Արծրունեաց Ներշապհոյ, և զսուրբն զԱրշէն երէցն, որ էր ի գաւառէն Բագրևանդայ ի գեղջէն որ կոչի Եղէգեակ, և զսուրբ սարկաւագն զՔաջաջ, որ էր և նա ի գաւառէն Ռշտունեաց, աշակերտ սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, թէ Որպիսի՜ աներկիւղ համարձակութեամբ ի վերայ անձանց ձերոց զայդչափ բազում մահապարտութիւն գիզեալ կուտեցէք. աւերեցէք զատրուշանսն, սպանէք զայնպիսի ճոխ կրականի... սպանէք զմոգեանն, կորուսէք ձերով կախարդութեամբ զայնպիսի քաջ այր զՎարդան։... Եւ լուեալ զայս ամենայն խօսս սպառնալեացս և զբանս պատուհասալեացս զչարաթոյն հազարապետին Արեաց Միհրներսեհի, և զամենայն զբան ուրացնւոյն՝ յառաջ կացեալ այրն Աստուծոյ Ղևոնդ ետ պատասխանի։ Ղևոնդ երէց յետ ծանօթացուցանելոյ Միհրներսեհի զՅովսէփ, զՍահակ եպիսկոպոս և իւր եկեղեցական աստիճանը՝ երկայն բանիւք ցուցուց, ըստ Փարպեցւոյն, թէ ուրիշ տարերաց պէս հասարակ նիւթ են կրակ և ջուր, զորս ինքեանք իսկ շատ անգամ կ'անպատուէին՝ վարելով զնոսա յայլևայլ պէտոյս։ «Հրով, ասէ, զարջառս և զոչխարս խորովէք և եփէք, և ջրով զդաշտանս և զթարախս և զաղբս լուանայք, և տուանձինն և կամ խառնեալ ընդ գինի՝ ըմպէք, և ոչ զարհուրիք և սոսկայք»։ Եւ որովհետև օրէնք էին Պարսից խօսել տալ իւրաքանչիւր ամբաստանեալ և ապա դատապարտել՝ Միհրներսեհ և այլք հարցուցին նաև զՅովսէփ կաթողիկոս և զՍահակ եպիսկոպոս, որ հաստատեցին զբանս Ղևոնդայ.— «Անօրէն Միհրներսեհի և այլ ուրացանոյն Արեաց ի ցասումն բարկութեան եղեալ՝ ասեն ցնոսա (ցընկերսն Ղևոնդայ). Ոչ հրամայէն մեզ օրէնքն մեր ցասնուլ ումեք՝ մինչչև լուեալ ի բերանոյ նորա... Արդ դուք գիտել տուք մեզ, թէ և ձեր նո՞յն բանք են զոր մա-

Հպարտդ այդ իշխաց աներկիւղ համարձակութեամբ յանդգնել և խօսել առաջի մեր։ Եւ սուրբն Յովսէփ և սուրբն Իսահակ ետուն պատասխանի և ասեն. Զամենայն բանսդ և զպատասխանիսդ զոր խօսեցաւ ընդ ձեզ տէրդ Ղևոնդ՝ խորհեալ էր մեր և խօսեալ. ի դոյն միտս և ի դոյն կամս ամենեքեան կամակիցք եմք։ Իսկ դու ախտիւ դառնութեան առ զայրացմանդ թշնամանեցեր. երանի՜ այնոցիկ որ մնաց աչօք սրատեսք իցեն և արդարահայեացք. այլ մարմնական ախտիւ մեծամեծք ըմբռնեալ տկարանան, է զի և կրտսերք, և դուք այդպիսի ախտիւ մի զայրագնեալ թշնամանէք»։ Բանք Փարպեցւոյն հոս մութ են։ Կը թուի թէ Միհրներսեհ թըշնամանած էր զՂևոնդ՝ վասն զի էր միականի։ Յովսէփ և Սահակ կամին ասել, թէ զայս մարմնաւոր թերութիւն ունին ոչ կրտսերք միայն, այլև մեծամեծք, ինչպէս Յազկերտ, որ նոյնպէս միականի էր. բայց երանի՜ նոցա որ մնաց աչօք սրատես են։ «Զայրագնեալ ի վերայ սրբոցն անօրէն իշխանն յաղագս թշնամանացն, որպէս թէ ՚ի Թագաւոր կողմն դարձուցին սուրբքն զբրքանսն՝ հրաման ետ դահճացն հարկանել խստապէս շղթայիւք զբերանս երանելեացն, մինչև լցեալ բերանք նոցա արեամբ՝ հոսէր արտաքս։ Եւ այսպէս փճարեալ արձակեաց զատեանն»։

7. Միհրներսեհ յաջորդ օրը կը պատմէ քահանայից պատասխանները Թագաւորին, որ զայրանալով՝ ի վաղիւն կը կազմէ ատեան, ուր կը հրաւիրուին աւագանին և ուրիշ պատուաւոր մարդիկ. կը բերուին կապեալ նախարարք. Վասակ ևս կու գայ իւր բոլոր պատուոյ նշաններով։ Թագաւորը կը հարցունէ նախարարաց, թէ ինչ համարձակութեամբ գործեցին այն ահաւոր ապստամբութիւնը.— «Եւ մտեալ ի վաղիւն անօրէնն Միհրներսեհ առաջի Թագաւորին Յազկերտի՝ տայր նմա գիտել զամենայն հարցուածս իւր և զպատասխանիս քահանայիցն։ Եւ սրտմտեալ Թագաւորն՝ հրամայեաց ի վաղիւն ատեան մեծ լինել առաջի իւր, և այր արի և անարի և զոր ինչ և ունէր ոք զպատիւ Թագաւորին՝ կազմ առաջի իւր եկեսցեն, և զկապեալսն զամենեսեան ածել զառաջեաւ։... Եւ լուեալ զայս ամենայն զինուորքն, որ ոք ունէր զպատիւ Թագաւորին՝ վաղ անդր հասանէին յատեանն։ Իսկ ուխտանենգ իշխանն Սիւնեաց Վասակ արկեալ զիւրեաւ զամենայն զոր ունէր ի Թագաւորէն՝ գայր մտանէր ի խորանսն արքունի մեծաւ շքեղութեամբ. քանզի բաց ի պատուոյ Թագաւորացն որ նուազէր նմա՝ այլ ոչ ինչ ի պատուոյ արքունի պիտոյ էր զոր ոչ ունէր, և կարծէր այնուհետև առնուլ զԹագաւորութիւնն մեծ աշխարհին Հայոց։... Եւ լցեալ արեօք ամենայն խորանն՝ հրաման տայր Թագաւորն զապստամբսն Հայոց

կապանօք ածել զուռաջեաւ։ Եւ ածեալ կացուցանէին զնոսա առաջի թագաւորին։ Եւ հարցեալ թագաւորին՝ ասէ ցնոսա. Որպիսի՞ համարձակութեամբ և կամ զի՞նչ զմտաւ ածեալ և կամ զի՞նչ ույժ օգնականութեան տեսեալ գիմեցէք յայնպիսի ահաւոր գործ, յորում տեսանէիք զկորուստ անձանց ձերոց և զաշխարհին, որպէս եղև իսկ և տեսէք»։ Ըստ Փարպեցւոյն՝ նախարարք լռեցին, և երբ թագաւորն երկրորդեց հարցումը՝ ի խնդրոյ նախարարաց Արշաւիր Կամսարական պատմեց համառօտիւ ի սկզբանէ՝ ինչ որ եղած էր, և ի մէջ բերեց մի ըստ միոջէ Վասակայ գործերն, թէ ինչպէս միացեալ նորա ի սկզբան ընդ Վարդանայ զարձաւ զնա յետս, մինչ կ'երթար նա ընտանեօք ի Յոյնս, խոստացաւ նմա կոչել յօգնականութիւն զՅոյնս և զՀոնս, գրեց նամակ առ կայսր և առ այլ դրացի իշխանս, զրկեց զՎարդան ի Վիրս ի վերայ Պարսից, և յետոյ բաժնուելով թողուց զնոսա, և այսպէս եղաւ պատճառ այնչափ արեան և աւերածոյ, ա. հ.։ Ըստ Փարպեցւոյն՝ ի հանդէս այս ամբաստանութեանց բերուեցան ի մէջ վաւերական թուղթեր, կընքով նորին իսկ Վասակայ։ Աւելորդ կը համարինք գնել Արշաւրի ատենախօսութիւնն որ յիշուած է այլուր։ Արշաւիր ի վախճանի երկայն ամբաստանութեանն ասէ. «Բայց դուք զնամականին զամենայն զոր գրեալ և կնքեալ է (Վասակ) առ կայսր և առ ամենայն աշխարհն Հոռոմոց և կամ առ այլս բազումս, տեսանել հրամայեցէք զայն, և որպէս ձեզ Արեաց կամ է՝ հրաման տուեալ կատարեցէք ի վերայ մեր։ Զի ուր գրեալք և կնքեալք ի միջի են, որպէս ձեր արդարութիւնդ, աւելորդ բանից և շատախօսութեան պէտք անդ ոչ են։ Եւ լուեալ զայս ամենայն կարգաւ ի Կամսարականէն Արշաւրայ արքային Պարսից և ամենայն աւագանւոյն դրանն, տեսեալ զնամականին զոր գրեալ էր Վասակայ Սիւնեաց տեառն, և ի վերայ հասեալ՝ մեծապէս հիացեալ թագաւորն Յազկերտ և ամենայն իշխանք դրանն զարմացան» (Փարպ. ԽԵ.)։ Արշաւիր կըրնար յայտնել Յազկերտի և աւագանւոյն Պարսից, թէ Վասակ գրած էր նամակներ առ կայսր և այլ օտար իշխանս օգնութեան համար. բայց թէ այն նամակներն հանդերձ կնքով Վասակայ իբրև ապացոյց բերուեցան ի մէջ՝ այս չէր հնար, ուստի և չէ հաւատալի։ Հոս կը մատնուի հաւատարմութիւն Փարպեցւոյն։

Յազկերտ, ըստ Փարպեցւոյն, յետ սաստկութեամբ յանդիմանելոյ զՎասակ, ամենևին առանց առնելոյ զնա արժանի պատասխանւոյ, որ չէ հաւանական՝ կը հրամայէ մերկացուցանել զնա յիւրմէ պատուոյն։ Ըստ Փարպեցւոյն՝ կը կարգի իշխան Սիւնեաց փեսայ

Նորա ուրացեալն Վարազվաղան, որ երկար ժամանակ տանջուելով
դիւահարութեամբ՝ կը մեռնի։ Առ Եղիշէի չիք ամենևին յիշատա-
կութիւն Վարազվաղանայ, որում բաւական մեծ դեր խաղալ կու-
տայ Փարպեցին։ Իսկ Վասակ կը մնայ ի դրան մինչև ի վախճան
իւր, հանապազօր ձաղելով զանձն իւր ուրացութեան համար բա-
նիւք յուսահատութեան, զորս լսած էր Փարպեցին, որպէս ասէ՝
նորին իսկ Վասակայ համատարիմ ծառաներուն բերնէն.—«Յայն-
ժամ յառաջ կոչեցեալ թագաւորին զիշխանն Սիւնեաց Վասակ՝ սկսաւ
սաստիկ և տաւելապէս զայրացեալ սրտիւ խօսել ընդ նմա և ա-
սել. Է՛ արդարև լուեալ մեր զայդ ամենայն նենգաւոր իրս քո և
զարարուածս. բայց արդ, ա՛ղէ, ասա, զի՞նչ խորհելով և կամ որպէ-
սի՞ ինչ զմտաւ ածեալ զայդպիսի իրս վնասից իշխեցեր ձեռնարկել
և գործել. քանզի դու էիր իշխան և գլուխ աշխարհին Հայոց.
նախ քաջալերել բանիւ զմարդիկն, զոր ի նամականցն գրելոց ի քէն
զոր առեալ մեր կարդալ՝ ստուգութեամբ տեղեկացաք։...Բայց զայս
գիտեա, զի յայսմհետէ Սիւնեաց տէր չես։... Իսկ ողորմելի ուխտա-
դրուժն Վասակ թէպէտև կամէր խօսել ինչ և տալ պատասխանի՝
չգնէր ոք ունկն բանիցն և կամ ախորժէր։... Հրաման տայր թա-
գաւորն Յազկերտ անդէն զառաջեաւ կողոպտել ի նմանէ թշնամա-
նօք զամենայն պատիւն զոր ունէր. և ձաղեալ զնա պայկացն՝ մեր-
կացուցին զնա. մերկացուցեալ ի նմանէ զզարդարանս պատուոյ
տէրութեանն՝ հանին զնա խայտառականօք արտաքս քան զհրա-
պարակն արքունի։ Եւ ի նմին աւուր զթշնամին նորա զսեպուհն
սիւնի, զուրացողն Վարազվաղան տէր ի վերայ աշխարհին Սիւնեաց
կացուցանէին, որոյ որքան ժամանակս կալեալ զիշխանութիւնն
Սիւնեաց՝ բազում արարեալ անիրաւութիւնս, և բազում տունս
մոխրանոցս շինեալ յաշխարհին Սիւնեաց ի գայթակղութիւն տանն
իւրոյ՝ բազմաժամանակեայ տանջեալ ի դիւէ դառն մահուամբ
սատակեցաւ չարաչար։ Եւ նենգաւորն Վասակ կացեալ ի դրանն
ամս ինչ կարի վշտագին և նեղութեամբ բազմաւ, մաշէր զաւուրս
իւր հառաչելով և յոգւոց հանելով զամենայն օր և զժամ, մինչև
թշնամանակերպ ձաղանօք սփռեալ զթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին
զիւրոյին ծեծէր զդէմսն ասելով. Ահա ընկալ զայս ձաղսս, զոր ե-
բեր քեզ ուխտանենգութիւն սրբոյ Աւետարանին և արիւն նահա-
տակութեան սրբոյն Վարդանայ Մամիկոնէի և այլոցն ցանկալի հա-
ղորդելոցն ընդ նմա, որոց ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ընկա-
լան զանուն բարի յերկրի և անանց յազգաց յազգս իւրեանց։ Իսկ
դու, ասէ, մեղաւոր անձն իմ, կեաս խղճիւ ցաւօք մտաց զօակաւա-
թիւ զաւուրս կենցաղոյս, և պատրաստեալ պահիս մշտնջենաւոր և

անանց գեհենին։ Զայսպիսի բանս հառաչանաց նորա և լալոյ մին-
չև յօր մահուան իւրոյ՝ խօսէին ընդ մեզ զայս արդարապատումն
սպասաւորք նորին իշխանին Վասակայ, որոյ և վախճանն իւ-
անդէն յերկրին Պարսից վճարէր» (Փարպ. ԽԶ.)։

Ց. Այս է ըստ Փարպեցւոյն պատմութիւնն անցից յետ պա-
տերազմին, արդարև բնական, բայց կան ըստ մեզ ինչ ինչ արժանի
դիտելոյ։ Նախ՝ եթէ ճշմարիտ է Վասակայ սպասաւորաց վկայու-
թիւնն առ Փարպեցին՝ Վասակ էր ոչ բանտարկեալ իբրև մահա-
պարտ, այլ մնաց պատուով յարքունիս հանդերձ սպասաւորօք, և
մեռաւ մեծ զղջմամբ իբրև ապաշխարող, թէպէտ զհակառակն ու-
նինք առ Եղիշէի, ինչպէս պիտի տեսնենք։ Երկրորդ և մանա-
ւանդ, եթէ որպէս պատմէ Փարպեցին, բոլոր աւագանին Պարսից և
Յազկերտ գլխովին հաւանեցան, թէ Վասակ էր պատճառ այն ա-
մենայն չարեաց՝ պարտ էր դատապարտել զնա ի մահ, որպէս կա-
մի ասել Եղիշէ, և զհակառակ կողմն իբրև ի նմանէ թելադրեալ՝
արձակել։ Զարմանալի է սակայն, որ Վասակ կը մնայ անպատիժ ի
դրան, և հակառակ կողմը կը պատժուի չարաչար. քահանայք, ըստ
պատմութեան նորին իսկ Փարպեցւոյն և Եղիշէի, կ՚սպանուին տան-
ջանօք, և նախարարք մնալով շատ տարիներ յօտարութեան ան-
հնարին նեղութեամբ՝ հազիւ կը դառնան ի Հայս։

Գ. Ի լրումն պատմութեան Վարդանանց՝ գտնենք հոս տարբե-
րութիւններն որ կան առ Եղիշէի, տարբերութիւններ՝ որ դժուա-
րին կը գործեն մեզ կատարեալ ստուգութեան հասնել այս պատ-
մութեան վրայ գէթ ըստ պարագայից, թէպէտ հաւանականութիւնը
կը մնայ մեծաւ մասամբ ի կողման Փարպեցւոյն։

Թէ յետ պատերազմին Վարդանանց Ատրորմիզդ ոմն պարսիկ
դրուեցաւ մարզպան, Մուշկան Նիւսալաւուրտ հանուեցաւ, և կղե-
րէն երևելիներ, յանուանէ Յովսէփ կաթողիկոս, Սահակ եպիսկո-
պոս Ռշտունեաց և Ղևոնդ երէց հանդերձ Վասակաւ կոչուեցան
յարքունիս՝ յայսմ միաբան է Եղիշէ ընդ Փարպեցւոյն.—«Յայնժամ
զմի ոմն յաւագ նախարարացն, Ատրորմիզդ անուն... գրէր և յանձն-
առնէր նմա (Յազկերտ) զաշխարհն Հայոց մարզպանութեամբ, և
զՄուշկան Նիւսալաւուրտ հանդերձ զօրուն գումարէր յաշխարհն
Աղուանից... իսկ զՎասակ հանդերձ գլխաւոր քրիստոնէիւք ի դուռն
հրամայեաց կոչել» (Եղիշ. էջ 227, 228)։ Թէ նախարարք ևս «սուտ-
երդմամբ և սնոտի խոստմամբ» բռնուելով տարուեցան ի Պարս՝
յայսմ ևս միաբան է Եղիշէ ընդ Փարպեցւոյն. միայն ըստ Եղիշէի՝
նախարարք գնացին կամաւ և ոչ բռնի կապանօք.—«Արդ եկն ե-
մուտ մարզպանն Ատրորմիզդ յաշխարհն Հայոց սիրով խաղաղու-

թեամբ... և ինքն իսկ շրջէր և ժողովէր ուխտիւ հաստատութեան... Զամենայն կարգս աստուածպաշտութեանն..., ասէ, կալցին... Իսկ Նախարարքն որ էին յամուրս աշխարհին և կամ ի հեռաւոր օտարութեան, իբրև տեսին զշինութիւն երկրին... քաջալերեցան համարձակեցան յանդիման լինել արքային... Եւ զայս լուեալ Թագաւորին՝ ոչ կապանօք, այլ արձակ ոտիւք և արձակ ձեռօք հրամայեաց առ ինքն կոչել։ Ածին (նոքա) փաղփաղակի զկին և զորդիս և զինչս իւրաքանչիւր ի տուն մարզպանին, և ինքեանք փութանակի գնացին ի ձմեռոցն արքունի (ի Տիզբոն)... Իսկ սուրբ քահանայքն, վասն զի կապանօք տանէին՝ յետ երկուց ամսոց և քսան աւուր հասանէին ի ձմեռոցն արքունի» (Եղիշ. էջ 228, 231, 234, 230)։ Իսկ որ ինչ պատահեցան յետ գալստեան քահանայից, Նախարարաց և Վասակայ ի Պարսս՝ բազմօք կը տարբերին ի պատմութեան Փարպեցւոյն և Եղիշէի։ Ըստ Փարպեցւոյն, ինչպէս տեսանք՝ Վասակ «մեծարանօք և շքեղութեամբ» ընդունուեցաւ Թագաւորէն, թէպէտ «առ վայր մի», «որպէս յանդէտս», այսինքն լըռելով առ ժամն, թէպէտ գիտէր թէ յանցաւոր էր։ Ըստ Եղիշէի՝ Վասակ արհամարհաօնք կ'ընդունուի Թագաւորէն. թէպէտ կը ջանայ արդարացունել զանձն՝ բայց կ'ընդունի պատասխան, թէ «Յորժամ քրիստոնեայքն ևս եկեսցեն՝ հասարակ լուայց յատենի»։ «Քրիստոնեայ» բառն ի բերան Յազկերտի, քահանայից և Նախարարաց համար, որպէս թէ նոքա էին քրիստոնեայ, և Վասակ չէր վասն ուրացութեանն՝ չմտուիր բնական։ Ըստ Փարպեցւոյն՝ քահանայք, այսինքն Յովսէփ կաթողիկոս, Սահակ. Ղևոնդ և այլք, հասնելով ի դուռն՝ կը դատուին հազարապետէն Արեաց Միհրներսեհէ, և խիստ պատասխաններ տալով կ'ընդունին երկաթի շղթայիւք հարուած ի բերանս, ինչպէս տեսանք ի վերոյ։ Ըստ Եղիշէի՝ քահանայից հարցափորձը կատարուեցաւ ոչ ի Պարսս ի Միհրներսեհէ, այլ յԱտրորմզդէ ի Հայս.—«Եկն եմուտ մարզպանն Ատրորմիզդ յաշխարհն Հայոց... հրամանաւ արքունի կոչեաց առ ինքն զՍահակ եպիսկոպոսն Ռշտունեաց... դարձեալ և ի տանէն Արծրունեաց բարեպաշտօն երէց մի Մուշէ անուն... և երկու ևս այլ քահանայս, որոց անուանք են Սամուէլ և. Աբրահամ... և ժողովեցին ևս ի նոյն տեղի զմեծն Յովսէփ, զՂևոնդ և զՔաջաջ և զԱրշէն։ Եւ իբրև ուսաւ և տեղեկացաւ յամենեցունց մարզպանն՝ գրեաց և եցոյց յարքունիսն» (Եղիշ. էջ 228, 229)։ Դարձեալ ըստ Փարպեցւոյն, ինչպէս տեսանք՝ Նախարարք կապանօք բերուեցան առաջի Յազկերտի. եղաւ հարցափորձ. Արշաւիր Կամսարական հրամանաւ Թագաւորին յանուն Նախարարաց խօսեցաւ իբրև ամբաստանող ընդդէմ Վասա-

կայ, զոր յանդիմանեց Թագաւորն իբրև յանցաւոր, տուաւ պայկաց մերկացունել զնա ի պատուոյն, և հանելով զնա Սիւնեաց իշխանութենէն՝ արտաքսեց ատենէն. և այս՝ երկու կամ երեք աւուր մէջ։ Ըստ Եղիշէի՝ Հարցափորձն եղաւ ոչ Ցազկերտի, այլ Միհրներսեհի հազարապետին և աւագանւոյն առջև, տևեց շատ օրեր. ամբաստանողք էին ոչ մի, այլ բազումք — Մուշկան Նիւսալաւուրտ, պարսիկ զօրականէն շատք, ուրացեալ ընկերք Վասակայ, մոգք և օգնականք նոցա, ազգականք իսկ Վասակայ, և կապեալ քահանաներէն Սահակ եպիսկոպոս։ Արշաւրի Կամսարականի և. երկայն ատենախօսութեան նորա յիշատակութիւն ամենևին չկայ. այս դատին մէջ Վասակ և կուսակիցք նորա կը դատապարտուին, մանաւանդ Վասակ, որ կը դատուի մահապարտ. — «Եւ մինչդեռ անդէն ի ձմերոցին էր Թագաւորն՝ առեան հարցափորձի ի մէջ նոցա հրամայէր լինել։ Եւ նստաւ Հազարապետն զի լուիցէ կողմանցն երկոցունց։ Եւ իբրև յերկարեցաւ ամբաստանութիւնն զաւուրս բազումս՝ պարտաւորեցաւ կողմն ուրացելոցն։ Մուշկան Նիւսալաւուրտ յայտ առնէր պատերազմակից ընկերօքն իւրովք, թէ յետ վճարելոյ պատերազմին բազում արիւն ետ հեղուլ Վասակ... Նաև յուրացեալ ընկերացն նորա բազումք էին որ յայտ արարին զչարիս նորա, զոր գործեալ էր ընդ աշխարհն Հայոց։ Եւ ի մնացեալ մոգացն և ի փշտիպանացն որք ի կապանսն ապրեալ էին, և ապա ածին յարքունիս՝ հարցին և ցնոսա վասն նորա և ասեն. Դուք էք ինչ տեղեակ վասն չարութեան սորա։ Ետուն պատասխանի և ասեն. Ամենայն անցք չարչարանաց որ անցին ընդ մեզ, և բազում հարուածք որ եղեն ի զօրսն արքունի, և աւեր և գերութիւն աշխարհին Հայոց՝ սկիզբն և առաջնորդ չարեաց այրդ այդ եղև։ Եւ մինչդեռ այս ամենայն ամբաստանութիւն զնմանէ էր զայնչափ աւուրս բազումս՝ յառաջ մատեան և իւր ազգականքն, որ ևս յառաջագոյն դատախազ լեալ էին զնմանէ առաջի արքային, սկսան կարգաւ ցուցանել և յայտ առնել... զբազում խարդախութիւնս նորա ոչ միայն առ ընկերս, այլ և առ Թագաւորն։ Յայնժամ հրաման ետ Հազարապետն. Ածէք այսր և ի կապելոցն որք են ի բանտի անդ։ Լուծին և ածին յերանելեացն զՍահակ եպիսկոպոս Ռշտունեաց և զսուրբն Յովսէփ և զՂևոնդ երէց» (Եղիշ. 236—238)։ Հոս Եղիշէ խօսել կու տայ զՍահակ եպիսկոպոս, որ դառն բանիւք կ'ամբաստանէ ըզՎասակ։ «Զարմացաւ, կը յարէ Եղիշէ, մեծ Հազարապետն ընդ միտս իւր, և ի խորհուրդս իւր քննէր զամենայն բանս ատենին։ Քանզի հասեալ էր ի վերայ, եթէ յիրաւի դատապարտեցաւ այրն ըստ անարժան գործոցն իւրոց։ Եմուտ և եցոյց զամենայն բանս

ատենին յարքունիս։ Եւ իբրև լուաւ Թագաւորն և ստուգեաց ի Հազարապետէն զառնն պարտաւորութիւն՝ բարկացաւ յոյժ և ի խոր խոցեցաւ, բայց միայն երկայնմտութեամբ կամեցաւ Հատուցանել զնա ի մեծ անարգութիւն։ Լուռ եկաց աւուրս երկոտասան, մինչ ի գլուխ չոգաւ փուրսիշ ամբաստանութեանն։ Եւ եղև յաւուր միոջ մեծի զամենայն երևելի և զպատուականսն Հրամայէր յընթրիս կոչել. կոչեցին և զուրացեալն։ Եւ նա ըստ առաջին կարգի օրինացն... զամենայն օրէնս պատուոյն զանձամբ արկեալ երթայր յարքունիս... եհաս և նստաւ ի ներքոյ գահլիճսն, որ էր Հրապարակ մեծամեծացն։ Արդ եկն եւ սենեկապանն յարքունուստ, Հարցանէր ցնա և ասէր. Արքայ յղեաց առ քեզ. յորմէ գտեալ է քո զայդ ամենայն պատուական պատիւդ. ասա ինձ վաղվաղակի, վասն որո՞յ արդար վաստակոց։ Եւ յուշ առնէր նմա զամենայն բանս ատենին յորում դատապարտեցաւն. նա և որ ոչ ևս անդ խօսեցան՝ զայն ևս յայտնէր նմա։... Պապանձեցաւ ամենևին, և ոչ գտաւ բան ճշմարիտ ի բերան նորա։ Իբրև կրկնեցին և երեքկնեցին, ցուցանելով ի ներքս յարքունիսն՝ Հատաւ վճիռ մահու ի վերայ նորա։ Եկն եւ դահճապետն, և մատեաւ առաջի ամենայն մեծամեծացն մերկեաց ի նմանէ զպատիւն զոր ունէր յարքունուստ, և զգեցոյց նմա Հանդերձ մահապարտի։ Կապեցին զոտս և զձեռս, և կանանցաբար նստուցին ի ձի մատակ. տարան և եդուն յայնմ զնդան ուր կային մահապարտք ամենայն» (Եղիշ. էջ 234—243)։

Բոլոր այս պատմութեան մէջ, որ ամենևին այլակերպ է ի պատմութենէ Փարպեցւոյն՝ յայտնի կը տեսնուի Եղիշէի կողմանէ բռնի ճիգն՝ երևցունելու զՎասակ չար և ատելի, ստուարացունելով կամ ծեքելով միշտ պարագաներն Հակառակ այս նշանաւոր անձին։ Եղիշէի չափազանցութիւնը կը տեսնուի մանաւանդ Հետեւեալ պատմութեան մէջ, ուր այս անխիղճ Թշնամին իբր Թէ կը նկարագրէ Վասակայ կենաց վախճանն իբրև դատապարտեալ ոգւոյ, որ աստէն իսկ յառաջ քան զմահն կ՚սկսի առնուլ իւր յաւիտենական պատժոյն առհաւատչեայն. «Իսկ ուրացեալն Վասակ Հայէր ի միաբանութիւն սուրբ կապելոցն, որք մեծաւ խնդութեամբ ընդունէին զչարչարանսն և զուարթագոյն և պայծառք երևէին որպէս յառաջագոյն յարքունիսն. Հայէր և կարօտէր»։ Վասակ ինչպէս կրնար տեսնել կապեալ նախարարներն, քանզի ինքն Եղիշէ կը յաւելու, Թէ «Ոչ ոք խառնեաց զնա ի նոսա, այլ ուրոյն նովին կապանօք պահէին»։ Բայց կը յաւելու. «Որ ըստ օրէ բէրէին իբրև զգէշ ընկենուին ի մեծ Հրապարակին, ձաղէին և այպանէին, և տեսիլ ամենայն կարաւանին զնա առնէին։ Կողոպտեցին Հանեն և

*ոչինչ թողին զոր ընդ իւրն ունէր. այնպէս ձաղեցին աղքատութեամբ՝ մինչ հաց մուրանային և բերէին նմա իւր ծառայքն։ Եւ այնպէս սաստիկ արկին զպարտերս հարկաց աշխարհին ի վերայ տան նորա՝ որ մինչև զհարց և զհաւուց և զիւր արարս և զզարդս կանանց ևս եդ ի վերայ և տուժեցաւ, և ոչ կարաց հատուցանել զպարտսն արքունի։ Եւ յայն տեղի հասուցին՝ մինչև հարցանել նմա, եթէ կայցէ ինչ գանձ ի գերեզմանս նախնեացն մերոց։ Եւ եթէ գտեալ էր նորա՝ հանէր և տայր ընդ իւր և ընդ ընտանեացն տուգանս. որպէս զի բազում մարդիկ իսկ չոգան ի տուժի։ Եւ իբրև այսպէս յամենայն կողմանց հարեալ վատթարեցաւ՝ անկաւ յախտս դժնդակս անդէն ի կապանսն։ Ջեռաւ փոր նորա, և հարան և տորոեցան գօգք նորա, և քամեալ մզեցաւ թանձրամսութիւն նորա։ Եռացին որդունք ընդ աչս նորա, և ի վայր սորեցին ընդ ունգունս նորա. խցան լսելիք նորա, և ծակոտեցան չարաչար շրթունք նորա. լուծան ջիլք բազկաց նորա, և յետ կոյս կորացան կրկունք ոտից նորա։ Բղխեաց ի նմանէ հոտ մահու, և փախստական եղեն ի նմանէ ձեռնասուն ծառայք նորա։ Լեզուն միայն կայր կենդանի ի բերան նորա» (Եղիշ. էջ 245—247)։ Փարպեցին, որ շատ բնական օրինակաւ և մեղմով կը պատմէ Վասակայ կենաց այս վերջին մասը՝ գոնէ ապաշխարութեան նշան կը յիշէ ի նմա ասելով, թէ «Զաղէր զանձն, լայր և հառաչէր մինչև ցօր մահուան իւրոյ»։ Եղիշէ այս շնորհը ևս զլանայ նմա.—«Ոչ գտաւ, ասէ, խոստովանութիւն ի շրթունս նորա։ Ճաշակեաց զմահ հեղձամղձուկ, էջ ի դժոխս անհնարին դառնութեամբ։ Ոտնհար եղեն նմա ամենայն սիրելիք նորա, և ոչ յագեցան սաստիկ հարուածովք ամենայն թշնամիք նորա։ Եւ այն որ կամէրն թագաւոր լինել մեղօք Հայոց աշխարհին՝ ոչ երևեցաւ տեղի գերեզմանի նորա, քանզի իբրև զշուն մեռաւ, և իբրև զգէշ քարշեցաւ։ Ոչ յիշեցաւ անուն նորա ի մէջ սրբոց, և ոչ մատեաւ յիշատակ նորա առաջի սուրբ սեղանոյն յեկեղեցւոջն։ Ոչինչ եթող չարիս զոր ոչ գործեաց ի կեանս՝ և ոչինչ մնաց ի մեծամեծ չարեաց որ ոչ անցին ընդ նա ի մահուան նորա։ Գրեցաւ յիշատակարանս այս վասն նորա առ ի կշտամբումն յանդիմանութեան մեղաց նորա, զի ամենայն որ զայս լուեալ գիտասցէ՝ նզովս ի հետ արկցէ, և մի լիցի ցանկացող գործոց նորա» (Եղիշէ 247, 248)։ Զարմանալի է որ Վասակ չսպանուեցաւ, քանզի ըստ Եղիշէի «հատաւ վճիռ մահու ի վերայ նորա», և ըստ Փարպեցւոյն՝ սուրբն Ղևոնդ երէց մարգարէական ոգւով ըսած էր, «Եթէ դու կենդանութեամբ զգուխդ ի վերայ ուսոցդ ի Հայս տանիս՝ տէառն Աստուծոյ ընդ իս չէ խօսեցեալ»։*

**10.** Եթէ ի պատմութենէ Փարպեցւոյն և մանաւանդ Եղիշէի, որ են մի միայն աղբիւրք, բառնանք ինչ որ վկայաբանական է կամ անմասն հաւանականութենէ՝ կը հասնինք սա պարզ պատմութեան։ Սասանեանք որ դքրիստոնեայ Հայաստան հանելու համար հռոմէական ազդեցութենէ մեծամեծ պատերազմներ տուած էին, և ի վախճանի ջնջելով թագաւորութիւնը կապած էին զմեծ մասն երկրին սասանեան պետութեան հետ գրեթէ իբրև նահանգ, տեսնելով տակաւին յազգին հզօր միտումն ի Յոյնս անդր հաւատակցութեան պատճառաւ՝ խորհեցան քայքայել այս կապը։ Յազկերտ Բ. ի վերայ հնարից նախորդաց իւրոց—Շապհոյ Բ-ի, Վռամայ Դ-ի, Յազկերտի Ա-ոյ, Վռամայ Ե-ի, յաւել նոր հնարս շահելու նախարարներն իւր նպատակին, որ էր բառնալ մուտ կրակապաշութեան ի Հայս. և տեսնելով թէ իւր դիտաւորութեան խափանարար մեծ էր արթնութիւն կղերին՝ կոչեց հայ նախարարներն ի դուռն, և առաւ նոցա հաճութիւնը մուծանելու կրակապաշտութիւնն իբրև տէրութեան կրօնք իրենց երկիրներուն մէջ, հաւասար քրիստոնէութեան։ Երբ այսպէս խաբուեցաւ արթնութիւն կղերին թագաւորին հնարողութենէն, և կրակապաշտութիւնն ըստ սկզբան գտաւ մուտ ի Հայս՝ ուրիշ հնար չմնաց կղերին՝ բայց միայն յարուցանել զազգն ընդդէմ նոր կարգադրութեան, որպէս թէ քրիստոնէութեան ջնջումն էր զոր կը պահանջէր Յազկերտ, մինչ հաւասարութիւն էր որ կը պահանջուէր, և ոչ ջնջումն առաջնոյն ի նպաստ երկրորդին գէթ առ ժամն։ Ողջոյն ազգն վառեցաւ ի սկզբան իբրև մի այր, վստահ յօգնութիւն քրիստոնեայ աշխարհին, որ չտեսաւ վտանգն այնպէս մօտալուտ՝ ինչպէս կը կարծէին Հայք։ Սուտ և զրպարտութիւն է, թէ Վասակայ սիրտն էր կանխաւ թիւրեալ ի կրակապաշտութիւն աշխարհային յուսով, և ի նոյն միտեցոյց զայլս։ Սակայնստոյգ է, թէ միութեան ոգին արդէն առած էր հատոյր հարուածը։ Թէ առանց արտաքին ձեռնտուութեան, մանաւանդ Յունաց, ի զուր էր յուսալ յաղթութիւն՝ յայտնի էր ամենուն. մարտիրոսական պսակի փառքը, որ կը թուէր լինել բարեպաշտագոյն մասին վերջին ակնկալութիւնը՝ չէր բաւական պատճառ Վասակայ պէս «յառաջիմաց» մարդոց բառնալ դուռն անխորհուրդ ապստամբութեան, որոյ վախճանն կ'սպառնար աղէտ։ Վասակ յետ կեցաւ ապստամբութենէն՝ երբ ելան ի գերև ամէն հնարք կասեցուցանելոյ հակառակ կողմը, երկպառակութիւնը զօրացաւ, և պատերազմն եղաւ ներքին և արտաքին միանգամայն։ Մեծ եղաւ կորուստը. սասանեան վրէժխնդրութիւնն յագեցոյց զիւր ցասումնն, նախարարաց և կղերին պատուա-

կանագոյն մասը ձգուեցաւ յատեան անգութ և մոլեռանդ իշխանութեան. ելքն էր աքսոր և մահ, որպէ՛ս և եղաւ իսկ։

Վասակայ վախճանին վրայ գրուածներէն սաչափ միայն կը թուի հաւանական, թէ Վասակ զրկուեցաւ իւր իշխանութենէն և պատուէն և մնաց յարքունիս. զայս կը պահանջէր Յազկերտի քաղաքականութիւնը. թերևս նաև Վասակայ նախկին միութիւնն չթուեցաւ հաճոյ թագաւորին և աւագանւոյն Արեաց։ Ահա Վարդանանց պատմութեան համառօտութիւնը։

**11.** Փարպեցին և Եղիշէ կը կցեն այս պատմութեան երկայն յաւելուած մը, ուր կը պատմուի նախարարաց աքսորն հանդերձ քահանայիւք, և այս վերջիններուն նահատակութիւնն այնպիսի պարագաներով՝ որ կը փոխեն պատմութիւնն ի վկայաբանութիւն կամ ի հոգևոր վէպ, ուր սաչափ միայն կրնայ ընդունուիլ իբրև պատմական, թէ Յազկերտ, յետ աքսորելոյ ապստամբ նախարարներն և զՂևոնդեանս ի Վրկանս (452), (նահանգ Պարսից առ հարաւային ափամբ Կասպից ծովուն) եկաւ անձամբ հոն (454), երբ կ'երթար ի պատերազմ ընդդէմ Քուշանաց, և տանելով զնոսա ընդ իւր յԱպար աշխարհ՝ դնել տուաւ Նիւշապուհ քաղաքին բերդը։ Ապար աշխարհ էր յարևելից հիւսիսոյ Վրկանից, և կը թուի լեալ մասն Աւարաց, հզօր ցեղ սկիւթացի, որոյ մի մասն վեցերորդ դարուն գաղթելով եկաւ յարևելեան Եւրոպա. իսկ Նիւշապուհ, հաւանականապէս Հեկատոմպիւղոսն (Հարիւրդռնեան) նախնեաց՝ էր քաղաք մեծ և ամուր, զոր շահաստան կ'անուանէ Փարպեցին, այսինքն վաճառաշահ։ Յազկերտ յետ պարտելոյն ի Քուշանաց, հրամայեց զքահանայս իբրև մահապարտս ըստ օրինաց Պարսից—վասն զի աւերած էին ատրուշաններ—սպանանել, հաւանականապէս գըլխատմամբ, իւր տէրութեան վեշտասաներորդ տարին, այն է իբր 457 ըստ հաշուոյ Փարպեցւոյն, եօթնևտասն ամօք յետոյ քան զմահն Սահակայ և Մեսրոպայ. իսկ Նախարարք, իբրև լոկ մասնակիցք ապստամբութեան, յետ մնալոյ յաքսորս՝ արձակուեցան առ Պերոզիւ, յաջորդաւ Յազկերտի, ինչպէս պիտի տեսնենք յետոյ։

**12.** Թէ պատմութիւն նահատակութեանն Ղևոնդեանց է լոկ վկայաբանութիւն, յօրինեալ անծանօթէ ումեքէ, յորմէ առած կը թուին Փարպեցին և Եղիշէ՝ յայտնի է անմիաբանութենէն այս երկուց. վերջինը, Եղիշէ, կ'սկսի մօգպետի մը հրաշալի դարձէն, որ յայտնի նմանութիւն է դարձի բանտապետին Գործոց առաքելոց. հաւանականապէս մուծեալ յիւրմէ։

**13.** Ըստ պատմութեան Փարպեցւոյն՝ Նախարարք էին թուով երեսուն և մի. «Ի տոհմէն Սիւնեաց երկու եղբարք Բաբկէն և Բա-

կուր. ի տոհմէն Արծրունեաց Ներշապուհ և Շաւասպ և Տնգին և Մեհրուժան և Պարգև և Տաճատ. ի տոհմէն Մամիկոնէից Համազասպեան և Համազասպ և Արտաւազդ և Մուշեղ. ի տոհմէն Կամսարականաց Արշաւիր և Թաթ և Վարձայ. ի տոհմէն Ամատունեաց Վահան և Առանձար և Առնակ. ի տոհմէն Գնունեաց Ատոմ. ի տոհմէն Դիմաքսենից Թաթուլ և Սատոյ, երկու ևս այլովք տոհմակցօք. ի տոհմէն Անձևացեաց Շմաւոն և Առաւան. ի տոհմէն առաջին Առաւեղենից Փափակ և Վարազդեն և Դատ. ի տոհմէն Արծրունեաց Ապրսամ. ի տոհմէն Մանդակունեաց Սահակ և Փարսման. ի տոհմէն Տաշրացեաց Վրէն. ի տոհմէն Ռոփսենից Բաբիկ և Յոհան»։

**14.** Իսկ քահանայք—այսպէս կ'անուանեն Փարպեցին և Եղիշէ զՂևոնդեանս—էին ութ անձինք. «Տէր Յովսէփ կաթողիկոս, Տէր Սահակ Ռշտունեաց եպիսկոպոս, երանելի երէցն Տէր Ղևոնդ, Տէր Մուշէ դրան երէցն Ներշապհոյ Արծրունեաց տեառն, Տէր Սամուէլ երէցն Արծայ, Տէր Աբրահամ սարկաւագ, Տէր Արշէն երէց Եղեգեկի և Տէր Քաջաջ սարկաւագ»։ Մին միայն էր եպիսկոպոս, այն է Սահակ, երկուքն սարկաւագ, Աբրահամ և Քաջաջ. մնացեալքն էին երիցունք, այն է լոկ քահանայ, բաց ի Յովսեփայ, որ թէպէտ տակաւին երէց՝ ընտրուած էր յաթոռակալութիւն յետ Մեսրոպայ. այսպէս կը թուի թէ ըստ պաշտաման մեծի մասին նոցա Փարպեցին և Եղիշէ կը կոչեն զնոսա քահանայս.—«Զսոսա ութ քահանայս, ասէ Փարպեցին, և զքրիստոսասէր կալեալ նախարարսն Հայոց... հրաման տայր թագաւորն Յազկերտ խիստ կապանօք պահել ի Վրկանի մինչև յամն վեշտասաներորդ թագաւորութեան իւրոյ։ Եւ յամին վեշտասաներորդի թագաւորութեան իւրոյ (456) (ըստ ստուգագոյն հաշուոյ՝ երկու ամօք յառաջ, 454) Յազկերտ չու արարեալ ամենայն բազմութեամբ իւրով խաղայր ի պատերազմ ի վերայ Քուշանաց. հրամայէր և զկապեալս Հայոց, զքահանայսն և զնախարարսն, խաղացուցանել ընդ իւր ի Վրկանէ։ Եւ ելեալ յԱպար աշխարհ, և եկեալ ի Շահաստանն որ անուանեալ կոչի Նիւշապուհ՝ հրամայէր պահել անդ զկապեալսն Հայոց, զքահանայսն և զնախարարսն ի դղեակ շահաստանին Նիւշապուհ»։ Այսչափ զգուշութեան պատճառ կը թուի լինել երկիւղն զոր ունէր Յազկերտ, թէ գուցէ նախարարք փախչելով ի Հայս՝ նորոգէին ապստամբութիւնը, մինչ ինքն զբաղեալ էր պատերազմաւ։ Ըստ Փարպեցւոյն՝ Յազկերտ չարաչար յաղթուելով կը դառնայ ամօթով.—«Նկուն եղեալ դառնայր ամօթալից, կորուսեալ ի զօրաց իւրոց արս ընտիրս և ականաւորս»․ և մոգերն համարելով զայս պատեհ առիթ՝

կը գրգռեն զթագաւորն տալ սպանանել զքահանայսն, որպէս թէ ի պատճառս նոցա եղաւ այն պարտութիւն, վասն զի մնացին նոքա անպատիժ.— «Եւ թագաւորին Յազկերտի տեսեալ զայնպիսի թեթեւութիւն ծանականաց իւրոց՝ յանհնարին տրտմութիւնս ընկղմեալ մաշէր... Եւ մոգուց իմացեալ զտրտմութիւն թագաւորին՝... սկսան խօսել ընդ թագաւորին և ասեն. Արքայ քաջ, մի՛ յանձեսցին միտք քո յայլ խորհուրդ վասն վատ պատահմանց որ դիպեցաւ մեզ ի թշնամեաց, այլ ի ցասմանէ աստուածոցն, որ կարի խիստ զայրացեալ են մեզ յաղագս աստուածասպան քահանայիցն Հայոց, որ վաղ արժանի էին մահու, և ձեր անփոյթ արարեալ՝ կան կենդանի մինչև ցայսօր»։ Յազկերտ չէր այնչափ անմիտ՝ մինչև ընծայել զիւր պարտութիւնն այնպիսի չնչին պատճառի, և չթուէր թէ կուտար սպանանել զքահանայսն. բայց ստիպուեցաւ յերկիւղէ մոգուց, քանզի ըստ օրինաց քէշին Պարսից մահապարտ էին քահանայք, իբրև աւերիչք ատրուշանաց։ Զկրակ սպանանել և զատրուշան աւերել ստէպ կը գտնենք յիշուած ի հարցափորձս քահանայից իբրև մահապարտութեան յանցանք։ Այսպէս Միհրներսեհ յառաջնում հարցափորձին ասէր ցՍամուէլ երէց և ցԱբրահամ սարկաւագ, «որոց, ասէ Փարպեցին, զկրակն անցուցեալ էր զԱրտաշատու». «Որպիսի՞ համարձակութեամբ իշխեցէք գործել զայդպիսի մահապարտութեան գործ, և այնպիսի մեծ կրակի իշխեցէք ձգել զձեռս ձեր»։ Դարձեալ նոյն Միհրներսեհ ի յանդիմանելն զՅովսէփ կաթողիկոս և զընկերսն իբրև նոյն յանցանաց տէր՝ ասէր. «Որպիսի՞ աներկիւղ համարձակութեամբ զայդչափ բազում մահապարտութիւն դիզեալ կուտեցէք, աւերելով զատրուշանս և սպանանելով զայնպիսի ճոխ կրականն»։ Յազկերտ վճռեց քահանայից գլխատումը, բայց անապատ տեղ, հեռու քաղաքէն, հաւանականապէս չկամելով կամ թերևս չիշխելով առաջի աչաց նախարարաց տալ կատարել զայն ողբալի տեսարան. թէպէտ, ըստ Փարպեցւոյն՝ Յազկերտի այս զգուշութեան պատճառն էր ծածկել քրիստոնեաներէն սպանման տեղը, գուցէ գալով նոքա առնուին սպանելոց նշխարներն, իբրև անգին մնացորդներ ընդդէմ պատահարաց։ Նաև հրամայուեցաւ յետ սպանման նոցա դնել պահապաններ տասն օր և աւելի ևս, «որպէս զի գիշատեալ ի թռչնոց ընկեսցի այսր անդր ոսկրոտին ի գլուխ լերանց և կամ ի խորաձոր տեղիս քարանձաւաց»։ Ինչպէս կ'երևի՝ վկայաբանն, ո՛ ոք և էր՝ հնարեց այս պարագան, որպէս զի յետոյ տար ցրուել պահապանաց սքանչելեօք, և հասուցանել ոսկրոտին ի ձեռս քրիստոնէից։ Ըստ պատմութեանն՝ Յազկերտ գաղտնի պահելու համար նախարարներէն քահանայից սպանումը՝ հանեց համ-

քաւ, թէ պիտի արձակուէին նոքա ի Հայս. բայց Ղեւոնդեանք որպէս թէ աստուածային յայտնութեամբ իմանալով Թագաւորին Նըպատակը՝ յայտնեցին նախարարաց, մարգարէանալով նաև նոցա մօտալուտ արձակումը.—«Յազկերտ տայր հրաման Վեհդենշապհոյ ամբարապետի առնուլ ընդ իւր երկուս ևս այլ օգնականս յաւագանւոյն, զՋնիկան մայպետն արքունի, և զՄովան անդերձապետ, երթալ փութով յառաջ քան զինքն, և հանել զսուրբ քահանայսն ի բանտէն, ուր էին կապեալք նոքա և նախարարքն Հայոց, և տանել հեռի ի քաղաքէն յանկոխ և յանապատ տեղի, և բառնալ զնոսա ի կենաց։ Բայց յոյժ պատուիրանաւ զգուշացուցանէր Թագաւորն Վեհդենշապհոյ՝ ոչ տալ ումեք գիտել զճանապարհն ընդ որ տանիցին, և ոչ զտեղի մահուանն ուր սպանանիցեն զնոսա։ Քանզի լուեալ է մեր, ասէ, ստուգութեամբ, թէ որք ի մոլար աղանդն են քրիստոնէից՝ խնդան, զի եթէ ոք յոսկերաց անտի այնոցիկ որ յաղագս Աստուծոյն իւրեանց մեռանին, լիւրում տանն ունիցի փոքր խրխոր ինչ՝ վատ ինչ և խորամանկ ի նա և ի նորա տունս և ի սիրելիս ոչ մերձենայ... և զինչ ևս այլ աւելի ասեմ, և զհարց և զմարց զարդս զոր արարեալ է մեծաւ աշխատութեամբ, ճիտակս և կամ զտակս ինչ մարգարտոյ կարի մեծագնոյ՝ կանայք քրիստոնէիցդ չհամարին ինչ հանել յանձանց և տալ գնել փխրանս ինչ յոսկերաց այնպիսեացն»։ Այս բանք, զորս վկայաբանն կը դնէ ի բերան Յազկերտի՝ են հաւատացողի զօրութեան նշխարաց սրբոց, ապա թէ ոչ, զի՞ փոյթ էր Յազկերտի չթողուլ որ այն նշխարներէն հասանէին ի ձեռս քրիստոնէից։ «Զայս ամենայն բանս լուեալ ի Թագաւորէն ամբարապետին Վեհդենշապհոյ յԱպար աշխարհին, մտեալ ի դղեկ շահաստանի Նիւշապհոյ՝ խօսէր բանս սուտս և տայր աւետիս նենգութեամբ, թէ արքայից արքայ հրաման ետ ինձ զհայ երիցունսդ որ աստ ի կապանս են՝ արձակել յաշխարհն իւրեանց, և վասն այլ ազատանոյն որ է Հայոց են՝ պայման արար, թէ ես յորժամ գամ՝ արձակեմ ի կապանաց։ Բայց սուրբ քահանայքն իբրև լուան՝ իսկոյն գիտացին ազդեցութեամբ սուրբ Հոգւոյն, և ասեն ցնախարարսն, թէպէտև կամէր արդեօք Վեհդենշապուհ թաքուցանել զճշմարտութեան բանն... Դուք ողորմութեամբն Քրիստոսի արձակելոց էք ի կապանացդ, և մեք զօրութեամբ սուրբ Հոգւոյն կատարեալ զտաղտուկ աւուրս կենցաղոյս պանդխտանոցիս՝ գնալոց եմք ի բնիկ աշխարհն մեր»։

**13.** Հրաման սպանման քահանայից կատարուեցաւ այսպէս։ Սամուէլ երէց և Աբրահամ սարկաւագ էին Թագաւորին հետ ի բանակին, և նախ գլխատուեցան սոքա.—«Հրաման տայր Յազկերտ

նախ զնոսա որ ընդ իւր քահանայքն էին, զսուրբ երէցն Սամուէլ և զսուրբ սարկաւագն Աբրահամ, յանհրևոյթ տեղի ինչ տանել զատ ի կարաւանէն հեռի և անդ գլխատել, յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից և պատուելոյ զոսկերս նոցա»։ «Բայց յառաջ քան զսպանանելն զնոսա, կը յաւելու վկայաբանն, հրաման տայր զաջ ձեռն կտրել զսրբոյն Սամուելի, և դնել ի ձեռին տեառն Աբրահամու. Նոյնպէս հրամայեաց և զսրբոյն Աբրահամու կտրել զաջ ձեռնն, և դնել ի ձեռին տեառն Սամուելի. փոխանակ, ասէ, զի իշխեցին ձգել զձեռս իւրեանց ի պատուական կրակն և սպանանել. և ապա սրով կտրել զգլուխս նոցա»։ Նոյն հրաման տրուեցաւ, ասէ վկայաբանն, վասն եպիսկոպոսին Բասենոյ Թաթկայ.—«Յետ այսորիկ դեսպանս հրամայէր առնել Թագաւորն Յազկերտ յաղագս երանելւոյ եպիսկոպոսին Բասենոյ Թաթկայ, որ կայր ի կապանս յԱսորեստանի... հրամայէր սպանանել անդէն և անհետ առնել զմարմին սրբոյն, յաղագս չգտանելոյ ուրուք ի քրիստոնէից ի պատիւ տանելոյ զոսկերս նոցա... Բայց յառաջ քան զվախճան սրբոյն քերեցին նախ տանջանօք զաւուրս բազումս զմարմին սրբոյն յոսկերացն; և ապա ըստ հրամանի Թագաւորին հատեալ սուսերաւ զգլուխն սպանինն»։ Իսկ մնացեալ քահանայքն, որ էին ի Նիւշապուհ ընդ նախարարսն՝ յանձնուեցան Վեհդենշապհոյ, որ երկու ընկերօքն որ յիշուեցան վերագոյնն, տանելով զնոսա հարուստ ժամս հեռու ի քաղաքէն՝ կատարեց զհրամանն։ Առանց համարելու հարկ յիշել մանր ինչ որ կը պատմէ վկայաբանութիւնն՝ համառօտենք պատմութիւնը։ Քահանայք, ինչպէս յիշուեցաւ՝ աստուածային յայտնութեամբ իմանալով, թէ կը տարուէին ի մահ՝ ծանուցին նախարարաց, և յետ անցուցանելոյ ամբողջ գիշեր մի աղօթիւք և խրատներով՝ առին հրաժեշտ, զոր կարի սրտառուչ կը նկարագրէ վկայաբանն, և ածան դահճօք, որ մեծ դժուարութեամբ խորտակեցին յոտից և ի ձեռաց սրբոցն ահագին շղթաներն, որովք կապեալ կը դնէ զնոսա վկայաբանն, ի սահմանեալ տեղին.—«Եւ լուեալ զայնպիսի հրաման ի սուրբ քահանայիցն ամենայն նախարարացն... մինչդեռ ուրախացեալ ցնծային... գային հասանէին բազմութիւնք դահճացն յամբարապետէն ջահիւք բազմօք սաստկապէս լուցելովք, քանզի ժամ էր հաւուն խօսելոյ, ունելով ընդ ինքեանս բազմութիւն դարբնաց գործովք արուեստաւորութեան իւրեանց, սալիւք և ուռամբք, կռանօք և խարտոցովք, խարտել և կտրել և ի բաց հանել զերկաթսն ի ձեռաց և յոտից և ի պարանոցէ սրբոցն. և զոր ոչն կարասցեն կտրել խարտոցովքն՝ ուռամբք ջարդեալ զբևեռ երկաթոյն, դնելով ի վերայ սալիցն բեկեալ հանցեն ի բաց։ Քանզի սատարք

էին և ծանունք քան զբնութիւն ամենայն երկաթոյ, որով զայլ նահատակսն կապէին... և մանաւանդ շղթայք սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ, զոր ևս առաւել ստուարագոյնս ածէին և անհեդեդս։... Արդ մատուցեալ դարբինքն և ի բազում ժամս ջանացեալ, և ոչ կարացին. յետոյ ապա եդեալ ի վերայ սալիցն և ուռամբք ջարդեալ՝ հազիւ զերծուցեալ հանէին զերկաթսն ի մարմնոյ սրբոցն, չարաչար կոտորելով և վիրաւորելով զմարմինս նոցա։... Եւ կատարեալ դահճացն զգործն ըստ հրամանին՝ խաղացուցանել այնուհետև ի շահաստանէն զսուրբսն փութային։... Չուէր այնուհետև ամբարապետն Վեհդենշապուհ հանդերձ քահանայիւքն ի Նիւշապհոյ... և առեալ զսուրբսն դահճացն՝ գնացին զբովանդակ գիշերն ընդ անկոխ անապատն, հեռի ի գեղջէն որպէս պարսիկ հրասախաւ միով, և թէ աւելագոյն. և ընդ ծագել առաւօտուն հասանէին ի տեղի մի քարուտ, առապարաձոր, աւազուտ. ի տեղի յոր ոչ հասանէր արօտական, և ոչ բնաւ անցանէր ընդ նա ուղևոր, վասն ոչ գիտելոյ երբէք ի նմա ճանապարհ»։ Ըստ Փարպեցւոյն՝ ոմանք ի սպասաւորաց քահանայիցն և երեցք երկու կը պատրաստուէին երթալ ընդ նոսա լինել պաշտօնեայ, թերևս և պսակակից նոցա, բայց արգելուեցան անդերձապետէն.—«Ոմանք ի սպասաւորաց երանելեացն, որք եկեալ էին ընդ նոսա ինքնակամ յօժարութեամբ յաշխարհէն Հայոց, արբանեկել նոցա և սպասաւորել ի կապանսն, որք և վիճակի բարւոյ մասինն լինել արժանիք տենչային, և մանաւանդ առաւել Խորէն երէց, որ էր ի գաւառէն Այրարատու, ի գեղջէն որում անուն էր Որկովի, և երանելին Աբրահամ երէց, որ էր ի գաւառէն Տայոց, ի գեղջէն որում անուն էր Զենակս։ Զոր տեսեալ Վեհդենշապհոյ և որք ընդ նմայն էին, և հարցեալ, թէ Դուք յո՞ կազմիք, և լուեալ ի նոցանէ, թէ Ուր զհոգևոր տեարսդ մեր և զվարդապետս տանիք, ընդ դոսա պատրաստ եմք երթալ ի կեանս և ի մահ՝ սրտմտեալ Վեհդենշապհոյ հրաման տայր բռնաբար ունել զնոսա և պահել անդէն ի շահաստանին»։ Կը նստին երեքին իշխանքն։ Բաց ի դահճաց և Խուժիկ անուն ումեքէ, որ է մի միայն աղբիւր այս պատմութեան, ինչպէս պիտի տեսնենք յետոյ՝ ոչ ոք էր մօտ—«Եւ արկեալ աթոռս երեցունց իշխանացն՝ նըստէին, ամբարապետն Վեհդենշապուհ, և Ջնիկան մայպետն արքունի և Մովան անդերձապետն, ոչինչ զգացուցեալ ումեք ի գեղջէն, և ոչ ամենեցունց զօրս ընդ ինքեանս, բայց միայն երանելի Խուժկաւն և անօրէն դահճօքն որովք սպանանելոց էին զսուրբսն. և կացուցին զսուրբ նահատակսն յատենի»։ Սկսաւ հարցափորձն, զոր երկայն կը յօրինէ վկայաբանն, թէպէտ այս եղած էր կանխաւ «ի դրան

առաջի հազարապետին Արեաց Միհրներսեհի»։ Յովսէփ կաթողիկոս իբրև գլխաւոր քահանայից՝ տուաւ այն հարցափորձին պատասխան, բերանով Սահակայ եպիսկոպոսի, քանզի նա միայն գիտէր պարսկերէն։ Առաջարկուեցաւ, ասէ վկայաբանութիւնն, նախ Յովսեփայ կաթողիկոսին, ապա Ղևոնդայ, ապա Մուշէի և Արշենայ երիցանց, և ապա Քաջաջայ, և հուսկ յետոյ Սահակայ եպիսկոպոսի՝ հնազանդել հրամանաց թագաւորին.—«Ի վերայ ձերոց այնչափ յանցանաց և մահապարտութեան, արքայից արքայ առ ձեզ կարի բարերարութիւն արար, զի հրաման ետ և ասէ, Թէ հաւանին արեգական և կրակի երկիր պագանել և զմեր օրէնս յանձն առնուն պաշտել՝ նոցա զմահապարտութիւնն թողում, և զազատորեարն որ կապեալ է՝ արձակեմ ի Հայս, և զիւրաքանչիւր ուրուք զտէրութիւնն տամ և զգահ և զպատիւ։... Զայս ամենայն բանս խօսեցաւ Վեհդենշապուհ հանդերձ ընկերօքն իւրովք առ սուրբսն։ Հրաման տային երանելոյն Սահակայ եպիսկոպոսին թարգմանել սրբայն Յովսեփայ և սրբոյն Ղևոնդի և այլոց ընկերացն, քանզի սուրբ եպիսկոպոսն միայն գիտէր պարսկերէն, և այլ ոք ի սրբոցն ոչ գիտէր։... Պատասխանի տուեալ սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ ասէ, թէ Եղև հարցմունդ այդ առենաւ ի դրան առաջի հազարապետին Արեաց Միհրներսեհի. և լուեալ ի մէնջ զբանս մեր և զկամս, զոր և թագաւորին գիտել ետ. նոյն են մեր ամենեցուն կամք և բանք, և ոչ փոխեմք զբանս մեր»։ Եւ որովհետև ամենքին մերժեցին խրատը, նա մանաւանդ թշնամանս ևս խառնեցին ի բանսն, - ըստ ոճոյ նախնի վկայից, որ կը տեսնուին ի հին՝ վկայաբանութիւնս,— կոչելով ոչ զիշխանսն միայն, այլ և զթագաւորն «անմիտ», «կորուսեալ», «ողորմելի քան զամենայն թշուառացեալս ի մարդկանէ», «տաշեալ», «բանդագուշեալ», «պակշոտեալ բանիւք», այլովքն հանդերձ՝—համբարակապետն չհանդուրժելով այլ ևս՝ ելաւ անձամբ ճեղքեց եպիսկոպոսին ուսը մինչև գօտին. այլ նա, ասէ վկայաբանն, ոչ միայն չանկաւ ի գետին, այլ և յենլով միւս բազկաւն ի քար մի՝ կ՚աղօթէր, թէպէտ արիւնը կը հոսէր գունդագունդ.— «Եւ սրտմտեալ անօրէն երեցունց իշխանացն, ոչ ևս առ ի յերկարոն հանդուրժել կարացեալ սրբոցն, որպէս շնորհ առնելով թագաւորին ընդ այնչափ թշնամանելոյ զնա, յարուցեալ ինքնին Վեհդենշապուհ առաջի գործակցացն իւրոց՝ հարկանէր սուսերաւ զուս սրբոյ եպիսկոպոսին Սահակայ, և հուպ ի գօտին մերձեցուցանէր զվէրսն, և սրբոյ եպիսկոպոսին ի սաստիկ հարմանէն դրդուեալ՝ ոչ գլորեալ անկանէր յերկիր, այլ ի քարի մի յեցեալ հաստատէր, և որպէս ի բերանոյ ամենայն սրբոցն սկսաւ ասել. Գոհանամք զքէն, Քրիս-

տոս… ընկալ զամենեսեան արժանաւորապէս զպատարագեալսս ի Հոտ անուշից։ Թէպէտև յորդեալ հոսէին վտակք արեանն ի վիրէ սրբոյն՝ սակայն կայր զօրացեալ ուժով շնորհօք Հզօրին, որպէս զի չիցէ բնաւ վիրաւորեալս։ Յետոյ հրամայեցաւ գլխատել զկաթողիկոսն. ապա հրաման տրուեցաւ դահճաց քարշել զՂևոնդ ընդ քարուտն ընդ երկար, մինչև քերեցաւ բոլոր մարմինն. և մինչ կը քարշէին զնա՝ միւս մասն դահճաց գլխատեցին զՄուշէ և զԱրշէն երիցունս և զՔաջաջ սարկաւագ։ Ղևոնդ բերուեցաւ կիսամեռ և գլխատուեցաւ, նոյնպէս Սահակ եպիսկոպոս, որոյ շունչը մօտ էր ի սպառել.—«Ապա հրամայէին և զսուրբ կաթողիկոսն Յովսէփ գըլխատել սրով։… Իսկ յաղագս սրբոյն Ղևոնդի հրաման ետուն դահճացն անօրէն իշխանքն՝ մերկացուցանել զսուրբն և քարշել ուժգին ընդ քարաժեռ կոպճուտ տեղիս լանջակողմանցն, և այնպէս քարշեցին յերկար ժամս՝ մինչև զամենայն մարմինս սրբոյն զլանջացն և զԹիկանցն քանցեալ քերեցին ի մորթոյն, մինչև ոսկերացն մերկանալ ի մորթոյն։… Եւ մինչդեռ կէսք ի դահճացն քարշէին զերանելին Ղևոնդ՝ այլք կտրեցին զգլուխ սրբոյ երիցուն Մուշէի և զսուրբ երիցոյն Արշենայ և զսրբոյ սարկաւագին Քաջաջայ։… Եւ ապա աշխատեալ դահիճքն որ քարշէին զսուրբն Ղևոնդ՝ ածին ի նոյն տեղիս սուղ ինչ ոգւով ուր և այլ սուրբքն կատարեցան, և անդ հատին զգլուխ սրբոյն սուսերաւ։… Եւ սուրբ եպիսկոպոսն Սահակ կայր ևս սակաւ ոգւով, զորոյ յետ վախճանելոյն ամենեցուն՝ կտրեցին զգլուխն սուսերաւ»։ Յետ այնորիկ մեկնեցաւ համբարակապետն ընկերօքն, Թողլով ինն զինուոր պահապան, ընդ որս էր և Խուժիկն.—«Եւ գնացեալ ի բաց ի տեղւոջէն Վեհդենշապհոյ և այլ իշխանացն որ ընդ նմա էին՝ ընտրեալ արս ինն Թուով Թողին ի տեղւոջն կազմ զինու, ընդ որս նախ առաջին ըստ Աստուծոյ ազդեցուԹեանն զերանելի Խուժիկն ընտրէր Վեհդենշապուհ և Թողոյր աղաչելով, որպէս զի կարի սեպհականագոյն և պիտոյ իւրում հրամանին։ Որոց հրաման տուեալ ասէին ցպահապանսն, Թէ մինչև ցաւուրս տասն և կամ ևս աւելի պահեսցեն զգուշուԹեամբ զդիակունսն, որպէս զի գիշատեալք ի Թռչնոց ընկեսցի այսր անդր ոսկրոտին ի գլուխս լերանց և կամ ի խորաձոր տեղիս քարանձաւաց, մինչև եկեալ անցցէ ի բաց կարաւանն արքունի. գուցէ, ասէ, եկեալք քրիստոնէիցն իրազգած յումեքէ եղեալ գտանիցեն զոսկերս դոցա, և առեալ սփռիցեն յամենայն քրիստոնեայս»։

**16.** Հոս հարկ է ցուցնել, Թէ ո՛վ էր Խուժիկն, որոյ վկայուԹենէն որպէս Թէ առնուած է այս պատմուԹիւն։ Խուժիկս այս, ըստ աւանդելոյ Փարպեցւոյն՝ էր անծանօԹ ոք ճանապարհորդ, որ

դիպուածով, կամ մանաւանդ աստուածային իմն տեսչութեամբ, ընտանենալով Վեհդենշապհոյ՝ լինի ականատես նահատակութեան Ղեոնդեանց։ Բայց էր նա, իբրև բարեպաշտ քրիստոնեայ վաճառական, կանխաւ ծանօթ նախարարաց և քահանայից, որոց լեզուն ևս գիտէր քաջ։ Սա գտնուելով ըստ պատահման ի Վրկանս, երբ իմացաւ, թէ Վեհդենշապուհ կը տանէր քահանաներն ի Նիւշապուհ նահատակել զնոսա հրամանաւ թագաւորին, ցուցնելով զանձն ջերմ կռապաշտ՝ յարեցաւ ի նա, և լինելով նմա սիրելի ի ճանապարհին՝ մնաց առ նմա, և լինելով ականատես մարտիրոսութեան վկայիցն՝ պատմեց յետոյ այն մարտիրոսութեան պատմութիւնը, պահելով աստուածային իմն ազդեցութեամբ ի մտի, ինչ որ տեսաւ և լսեց, նաև օքանչելեօք գողանալով նոցա ոսկրոտին բերաւ առ քրիստոնեայս։ Ահա պատմութիւն Փարպեցւոյն. «Չուէր այնուհետև ամբարապետն Վեհդենշապուհ հանդերձ քահանայիւքն ի Նիւշապհոյ ի վեցերորդ ժամու աւուրն ընդ ճանապարհն որ ելանէ ի Վրկանն։ Եւ լուեալ զայս առն միոյ վաճառականի որ էր ազգաւ Խուժիկ, որոյ ըստ օրինի վաճառականութեան շատ անգամ ճանապարհորդեալ էր ի Հայս, որ և զլեզու հայերէն խօսից քաջ տեղեկաբար գիտէր, և էր ինքն այր ի մանկութենէ իւրմէ կեցեալ առաքինի վարուք, եղեալ որդի քրիստոսասէր և հաւատացեալ ծնողաց, որ և զերանելի քահանայսն Աստուծոյ և զնախարարսն Հայոց որ ի կապանսն էին՝ յոյժ ընտանութեամբ գիտէր, առ որս և բազում ծախս յընչից և սպասաւորութիւն արարեալ էր մինչ ի Վըրկանին էին, ուշադրելով զամենայն օր և ակն ունելով մասին նըշխարաց ոսկրոցն ի կատարումն նոցա լինել արժանի։ Սորա լուեալ զհրաման թագաւորին՝ ճեպով և անյապաղ, ոչինչ զգացուցեալ ումեք, թողոյր զկարասին ի մանկունս իւր և յընկերս, և իւր առեալ ի գրաստուց իւրոց գրաստս տոկունս և ուժեղս, և նմանեալ առն կարաւանի գնայր ընդ ճանապարհ որ երթայր յԱպար աշխարհ, և ուղեկցեալ ճանապարհորդէր ընդ ամբարակապետին ընդ Վեհդենշապհոյ, ցուցանելով նմա զճանապարհայնն և յօթևանս ուր հանգչէին՝ բազում արթնութեամբ շուտութիւնս, և հաճոյ եղեալ Վեհդենշապհոյ ամենայն գործ հպատակութեան Խուժկին՝ սիրէր զնա յոյժ և խնամարկելով ողջունէր, վասն զի Աստուած էր որ յաջողէր զիրն։ Եւ եղեալ համարձակապէս յընդունելութեան մեծի իշխանին ընդ Խուժկին՝ հարցանէր զնա յաղագս գեղջն նորա և ծնողացն, թէ որպիսի՞ք էին և ուստի՞։ Եւ Խուժիկն խօսէր ընդ նմա այլաբանութիւնս, սուտ պատճառս և դիպողս ըստ առաջարկելոյ իրաց գործոյն։ Որդի եղեալ եմ ես, ասէ, ծնողաց օրինաւորաց, որք ի

Նախնեաց իւրեանց կրակի և արեգական հաւատարմապէս եղեալ են ծառայք, որոց զիս է նոսա յանձնեալ է ի մանկութենէ իմմէ, և նոցա պահպանութեամբն կացեալ եմ ի միջի մինչև ցայսօր և կամ, ճանաչելով յայտնապէս յանձին իմում զաստուածոցն օգնականութիւն»: Այսպէս բարեպաշտն Խուժիկ, որպէս զի ստանար սրբոց նշխարներն՝ կը խաբէ զՎեհդենշապուհ, կեղծաւորելով կրակապաշտ և նախանձաւոր պարսիկ, և միամիտ Փարպեցին կը ջանայ արդարացունել զնա օրինակաւ Պօղոսի. «Ցիշելով, ասէ, երանելոյ Խուժկին զպատճառագրութիւնսն վարդապետին հեթանոսաց Պօղոսի, որ երբեմն հաւատովքն փարիսեցի լինէր, և դարձեալ այլուր հռոմայեցի, որ ոչ էր յայսցանէ ի ժամուն և ոչ մի, այլ հաւատովք՝ Աւետարանին քարոզ էր և վարդապետ, և քաղաքաւ՝ ի Կիլիկեցւոց գաւառէն էր Տարսոնացի. բայց զմիտս լսողացն առ վայր մի սայթաքեցուցանէր այսր անդր, զի զճշմարտութիւն աճեցուցեալ հաստատեսցէ: Այսպէս և երանելի Խուժիկն պատրողական բանիւք զմիտսն Վեհդենշապհոյ խնդացուցանէր ի ժամուն, որպէս զի զիւր տենչանս տարեալ ի գլուխ կատարեսցէ ըստ կամի: Իսկ ամբարապետն Վեհգենշապուհ որպէս թէ յաստուածոց համարէր զպատահումն նմա Խուժկին, տեսանելով զայրն յամենայնի յաջողակ, և առաւել վարկանէր հաւատարիմ և ըմբռն գործոց իւրացն յոր երթայր. վասն որոյ և չտայր թոյլ առնն և ոչ ժամ մի հեռանալ յիւրմէ, այլ ի տուէ և ի գիշերի մօտ ունէր առ իւր բազում յարգանօք և սիրով, և հաւատայր նմա զխորհուրդ թագաւորին և զպէտս գործոյն յոր երթայր. վասն զի ըստ յառաջագոյն ասացելոցն՝ Աստուած էր որ տնտեսէր զիրսն ըստ իւրոց կամացն ի քակտումն և յամօթ անօրինացն, և յօգուտ և ի փառս եկեղեցւոյ իւրոյ սրբոյ:... Ապա պատճառէր երանելի Խուժիկն պէտս ինչ զիւր տեսանել այլուր, և խնդրէր աղաչելով հրաժեշտ ի Վեհդենշապհոյ. որով յամենայն կարծեաց հեռացուցեալ զմիտս ամբարակապետին՝ առաւել հաւատարմագոյն ցուցանէր նմա զինքն, գետելով յազդեցութենէ սուրբ Հոգւոյն, եթէ չտայ թոյլ Աստուած արձակել զնա նմա: Իսկ Վեհդենշապուհ և բնաւ իսկ ոչ առնոյր յանձն լսել բանից Խուժկին, այլ ասէր ցնա գաղտ, եթէ Դու որ օրինօք սնեալ ես և կեաս է ի փառս կրակաց, ո՞չ կաս առ իս յօժարութեամբ և տեսանես զկորուստ անօրէն կրակասպան մահապարտացն և ուրախանաս: Եւ երանելոյ Խուժկին լուեալ զայնպիսի բանս յամբարապետէն՝ մեծաւ երկրպագութեամբ շնորհ ունէր սիրոյն Վեհդենշապհոյ և... խընդրէր ի Բարձրելոյն շնորհել նմա ուշ և լայնութիւն սրտի, որով արժանի լիցի գրել հաւաստեաւ ի տախտակս մտաց իւրոց որպէս

յարձանագրի զամենայն հարցմունս բռնաւորացն, և զպատասխանիսն և զաղօթսն զոր իւրաքանչիւր ոք սրբոյն ի ժամ կատարման մատուցանէր Աստուծոյ, որպէս զի պատմել ճշմարտապէս կարասցէ ի կարգի առ ի յիշումն ամենայն հաւատացելոց լսողաց յազգս յաւիտենից։... Իսկ Վեհդենշապուհ ի սկզբանն ոչ համարէր արժանի պատմել Խուժկին զսուրբ քահանայիցն, զոր ինչ գործելոց էր ընդ նոսա, այլ ասէր թէ ի Վրկան տանիմք և անդի արձակեմք»։ (Թէպէտ ըստ նոյն Փարպեցւոյն՝ արդէն յայտնած էր նա Խուժկին, թէ պիտի սպանուէին քահանայքն, քանզի, ինչպէս տեսանք՝ կը յորդորէր զնա մնալ և «տեսանել զկորուստ անօրէն կրակասպան մահապարտացն»)։ Բայց փոխանակ երթալու ի Վրկան՝ կ'երթան անծանօթ և անապատ տեղեր հանդերձ դահճօք, և Խուժիկ որ իբրև վաճառական հմուտ էր այն տեղերուն՝ չիմանար դաւը.— «Եւ երթային այն օր ի գիւղ մի որում անուն էր Ռևան, հեռի ի Նիւշապհոյ որպէս հրասախօք վեցիւք. դադարէին անդ մինչև ցառաւօտուն պահն։ Յարուցեալ ապա փութով գաղտ, երանելի Խուժկաւն և անօրէն դահճօքն գնացին ընդ անկոխ անապատն հեռի ի գեղջէն... ի տեղի մի քարուտ, առապարաձոր, աւազուտ, ի տեղի յոր ոչ հասանէր արօտական, և ոչ բնաւ անցանէր ընդ նա ուղևոր, վասն ոչ գիտելոյ երբէք ի նմա ճանապարհ»։ Բայց Եղիշէ կ'ազատէ զմեզ այս դժուարութենէն ասելով, թէ Խուժիկ ոչ թէ վաճառական էր մտերմացեալ Վեհդենշապհոյ, այլ էր «ի զօրացն արքունի, վիճակեալ ի դասս դահճացն, և կայր ի սպասու օրապահացն հանդերձ գործիական տանջանարանօքն», այսինքն վերակացու դահճաց և պահապան տանջանաց գործիներուն։ Յայսմ կը միաբանի իւիք և Փարպեցին, քանզի ասէ, թէ յետ նահատակութեան քահանայիցն, երբ Վեհդենշապուհ կը մեկնէր ընկերներովն, և դիակունք սրբոցն յանձնուեցան պահապանաց՝ Խուժիկն, իբրև հաւատարիմ, կարգեցաւ վերակացու պահապանաց.— «Եւ գնացեալ ի բաց ի տեղւոջէն Վեհդենշապհոյ և այլ իշխանացն որ ընդ նմա էին, ընտրեալ արս ինն թուով՝ թողին ի տեղւոջն կազմ զինու, ընդ որս նախ առաջին ըստ Աստուծոյ ազդեցութեանն զերանելի Խուժիկն ընտրէր Վեհդենշապուհ և թողոյր աղաչելով, որպէս կարի սեպհականագոյն և պիտոյ իւրում հրամանին։ Որոց հրաման տուեալ ասէին ցպահապանսն, թէ մինչև ցաւուրս տասն և կամ ևս աւելի պահեսցեն զգուշութեամբ զդիակունսդ»։ Մինչ կը խորհէր Խուժիկ, թէ ինչպէս գողանար սրբոց մարմիններն՝ սքանչելի իմն դիպուած, նման այնմ որ պատահեցաւ ի յարութեան Փրկչին, ցրուեց պահապանները, և Խուժիկ կրցաւ դիւրաւ և աներկիւղ

բառնալ մարմիններն ըստ իւրում ցանկութեան.—«Եւ մնացեալ անդ պահապանացն ըստ հրամանին Վեհգենշապհոյ և Մովան անդերձապետի և Ձնիկանայ մայպետի, և կացեալք զայն աւուրս՝ խորհէր ի միտս իւր երանելի Խուժիկն, եթէ զինչպիսի՛ հնարիւք ցուցանիցէ Աստուած ճանապարհ առնն, որով արժանի լիցի գողանալոյ զնշխարս սրբոցն յայլոց պահապանացն։ Եւ մինչդեռ երանելին յայնպիսի վտանգի կայր՝ յանկարծակի ի նմին աւուր յերեկորեայ գիշերոյն լինէր շարժումն մեծ ի տեղւոջն. բոմբիւնք սաստիկք և ձայնք ահագինք յանդնդոց հնչէին, կուտեալք բազմութիւնք ամպոց զերկինս ծածկէին, ձայնք որոտմանց և փայլատակունք զլերինս դողացուցանէին, և սիւն լուսոյ ըստ օրինակի ծիածանի իջեալ յերկնից շուրջ պարուրեալ զնահատակաց զմարմինս ծրափակէր, և կործանեալ յերկիր պահապանքն կիսամեռք լինէին, չգիտելով այր զընկեր բնաւ արդեօք թէ ո՛ւր իցէ. որք և գլորեալք յերկիր՝ ոչ կարէին կալ հաստատուն, քանզի դողումն մեծի շարժմանն ի վեր ոստուցեալ զնոսա ընկենոյր յերկիր, և այսպէս կքեալ ոտիւք և կարկեալ խօսիւք լինէին խորտակեալք ամենեքեան։ Իսկ զերանելի Խուժիկն աջ հզօրին պահէր անհոգս. ուրախալից մտօք փառաւորէր զԱստուած, իմացեալ այնուհետև, թէ արդ հաստատ կատարին բազմաժամանակեայ կամաց իւրոց խնդիրք։ Եւ կատարեալ միապէս երկիւղիւ զգիշերն ողջոյն և զտիւն բովանդակ և զերկրորդ ևս գիշերն մինչև ի ժամ այգական ծագման՝ և ապա լռէին ձայնք անդնդոցն հնչմանց, և որոտմունք ամպոցն փարատեալ ցածնուին, և դադարէր երկիրն ի շարժելոյ, և ցայտմունք փայլատակմանցն ամփոփէին յերևելոյ, և լինէր այս լոկ շուրջ զտեղեաւն իբրև ասպարիսօք երկուք։ Իսկ պահապանքն յահագին ապշութենէ թմրութեանն սակաւիկ մի ոգի առեալ՝ աչս ածէին փախչելոյ ի տեղւոջէն. այլ ի յոյժ բեկմանէ սրտիցն յերկիւղէ՝ ոչ կարէին կանգնել յերկրէն, լոկ հայէին և եթ ընդ միմեանց դէմ, և խօսել ինչ ոչ կարէին։ Բայց զինն ժամաւ աւուրն երրորդի յարուցեալ երանելի Խուժիկն, որպէս թէ կամաւ կաղս ի կաղս, հայելով զկնի իւր՝ փախչէր ի տեղւոջէն, զի զնոսա զօրացուսցէ ի կանգնել և զկնի իւր հեռացուցանել ի վայրացն։ Որոց տեսեալ զերանելի Խուժիկն, զի երթայր խեկբեկս յընթացի՝ ուշաբերեալք առ վտանգին զկնի նորա սրանային ի տեղւոյն, չիշխեցեալք բնաւ դառնալ և հայել ի տեղին առ երկիւղի. և պնդեալք զհետ Վեհգենշապհոյ և զործակցացն նորա փութային. բայց երանելի Խուժիկն ընդ այլ ճանապարհ որոշէր ի նոցանէն։ Եւ հասեալ պահապանացն առ իշխանսն յաւուրն վեցերորդի, պատմէին զամենայն անցս աղետիցն որ ան-

ցին ընդ նոսա զտիւ մի և զգիշերս երկուս. զորոց զգոյն երեսացն տեսեալ Դենշապհոյ և ընկերացն նորա, և զանցս ահագին իրացն մի ըստ միոջէ լուեալ՝ զարհուրէին, և ապշեալք ի բազում ժամս հիանային։ Խորհուրդ ի մէջ առեալ ոչինչ կարէին իմանալ հնարս, բայց զպահապանսն եւեթ լռեցուցանել ջանային՝ չյայտնել ումեք ամենևին, և ոչ բնաւ յիշել ումեք զմահ քահանայիցն և կամ զայնպիսի նշանաց երևմունսն»։ Եւ ոչ այսչափ միայն. ըստ վկայաբանին զարմանալով քրիստոնէութեան մեծ զօրութեան վրայ՝ կը համարէին զանձինս մոլորեալ և կորուսեալ. — «Բայց ինքեանք միայն խոճոճելով առանձինն զարմացմամբ որպէս յանզգայութիւնն ընկղմէին, ասելով Դենշապուհ և Ջնիկան ցմիմեանս, եթէ Ոչ են իրք քրիստոնէից թեթև իմն և դուզնաքեայ. այլ հաստատ մեծ է զօրութիւն օրինաց նոցա և հաւատոց, և մեք յանգիտութեան վնասեալ կորնչիմք և չզգամք։ Իսկ երանելի Խուժիկն գիտացեալ, թէ ցածոյց Աստուած զամենայն կասկած յամենայն կողմանց, այլ և զպատասխանիսն իշխանացն լուաւ զոր ինչ պահապանացն արարին, և թէ ոչ ոք առնէ փոյթ ոսկերացն սրբոց՝ առեալ ընդ իւր տասն ևս այլ ընկեր, զորոց կարի՛ քաջ գիտէր զհաւատս քրիստոնէութեանն՝ առնուին ընդ ինքեանս և դրաստս, և ըստ իւրաքանչիւր անձին սրբոցն սապատս չորեքկուսիս։ Գնացին լռելեայն ի գիշերի, և մերձեալք ի վայրն՝ վրիպէին ի տեղւոյն ուր մարմինք սրբոցն կային, քանզի յոյժ աղջամղջին էր գիշերն. և աշխատեալք առ վայր մի՝ տրտմէին, անարժանս կարծեցեալ զանձինս գիւտի երկնաւոր գանձուն»։ Վկայաբանն անտարակոյս դիտմամբ կու տայ Խուժկին երթալ ի մթան առանց լապտերաց և ջահերու, որպէս զի մուծանէ նոր սքանչելիս։ «Եւ մինչդեռ, ասէ, նոքա խռովեալք յածէին ընդ տեղիսն՝ և ահա յանկարծակի նմանութիւն լուսաւոր արծւոյ սլացեալ հասանէր յերկնից, և իջեալ նստէր ի վերայ մարմնոյ սրբոյ առն Աստուծոյ Ղևոնդի. և լուսաւորեալ տեղիքն առաւել ևս քան ի տուէ՝ երևէին յայտնապէս մարմինք իւրաքանչիւր սրբոցն։ Եւ նոցա ուրախալից սրտիւք զուարճացեալք երկիր պագանէին Տեառն Աստուծոյ, և ձեռն ի գործ արկեալ ժողովեցին զիւրաքանչիւր ոք յականէ ի մի մի սապատ, որպէս նշմարեալ երևէր իբրև գրով երանելի Խուժկին. յորոց բուրեալ հոտ անոյշ ի մարմնոց սրբոցն՝ լցեալ զուարթացուցանէր զամենեցուն զգայութիւն խելացն։ Եւ բարձեալ վաղվաղակի գրաստուց՝ փոխէին յայլ տեղի յանապատին, հեռի ի տեղւոյն իբրև երիւք պարսիկ հրասախօք, և դադարեալ աւուրս եօթն վասն քաջ ցածնլոյ իրաց երկիւղին՝ ապա մաքրեցին զոսկերս սրբոցն յանուշահոտ մարմնոցն,

զոր և պատեալ արժանաւորապէս Թաղէին պատուով անդէն յանապատին զգուշութեամբ, և զոսկերսն առեալ բերէին ի շահաստանն, և աւուրս բազումս ունէին առ ինքեանս ի ծածուկ»։

Ըստ Փարպեցւոյն՝ Խուժիկ այն ոսկրներէն կը բաժնէ հաւատացելոց, բայց նախ իբրև երախայրի կը բերէ կապեալ նախարարաց, որ ուրախութեամբ կ'ընդունին, համարելով զայն նշան իւրեանց արձակման և դարձին ի Հայս.—«Ապա լռելեայն սկսանէին (Խուժիկ և ընկերք նորա) տալ ոմանց առաքինի քրիստոնէից որք ի կարաւանին էին, որք ընդունէին հաշուելով գիւտ փրկութեան ոգւոց և մարմնոց. և ստիպով յիւրաքանչիւր աշխարհս տալին հասուցանել վաղվաղակի։ Բայց զառաջին պտուղ աստուածաշնորհ մեծի գանձուն բերեալ նախ երանելոյ Խուժկին մատուցանէր կապելոց նախարարաց Հայոց. որք իբրև արժանի եղեալք ընդունէին զայնպիսի փրկութեան զիւրեանց զգիւտն, անդէն և անդ ճանաչէին, թէ այցելութեամբ այց առնէ նոցա Աստուած, և երբ և է արձակին ի կապանացն, բարեխօսութեամբ ոսկերաց սրբոցն, ըստ բանի առն Աստուծոյ Ղևոնդի»։

Այս Խուժիկ, զոր Փարպեցին չհամարիր արժան կոչել այս անուամբ, որ կը նշանակէ Խուժաստանցի—քանզի բուն անունն էր անծանօթ—պատմեց կապեալ նախարարաց, թէ ինչպէս աստուածային խնամով լեալ սիրելի Վեհդենշապհոյ՝ արժանացաւ լինել ականջալուր հարցափորձի սրբոցն և ականատես նահատակութեան նոցա, մինչև ի վախճանի ամփոփել զպատուական նշխարսն.—«Սկսեալ այնուհետև մի ըստ միոջէ պատմել կապելոց նախարարացն Հայոց երանելի այրն Աստուծոյ Խուժիկն, (զոր անուանել յայսմ հետէ Խուժիկ ծանրանամ, և զանուն սքանչելւոյն ոչ ոք հոգացեալ պատմեաց մեզ, այլ ամենագէտն գրեալ պահէ յօր մեծ այցելութեանն, և պարգևէ առատապէս զվարձս վաստակոց նորա ըստ հաճոյս անուան իւրոյ) ասէր և ոչ լռէր զխնամս մեծամեծս և զգնութիւն հզօրին զոր արարեալ էր նմա, և եթէ որպէս ի Վարդգէս յայտնեալ Քրիստոսի զխորհուրդ թագաւորին ծանոյց նմա, և ուղեկցեալ առաջնորդեաց նմա յուսով։ Մեծարոյ, ասէր, և հաւատարիմ առաջի Դենշապհոյ համբարակապետի երևեցոյց զիս, մինչ զի աղաչելով զիս բռնի տանել անօրինին ի ձեռն հզօրին Աստուծոյ ի տեղի տենչալի նահատակութեան սրբոցն, որում կամաց հընարաւոր է ամենայն, որ եղէ արժանի տեսանել զամենայն՝ զոր ոչ կարծէի լսել, և տեսանել մի ըստ միոջէ՝ որում ոչ արժանի լըսելոյ համարէի զանձն իմ. զհարցումն բռնաւորացն և զպատասխանիսն միոյ միոյ սրբոցն, զաղօթս և զկատարումն զիւրաքանչիւր

*անձին տեսի կարգաւ և լուալ․ աՀա արգ և մեծի մասին ձերայ անձանձրոյթ խնդրելով զիս անարժանս արժանի արար շնորՀ սուրբ Երրորդութեանն, մինչև երկնաւոր գանձու նշխարացն սրբոցն գտալ լինել բերող․ փախոյց ամօթով զպաՀապանսն տագնապելոյս, զար- Հուրեցոյց զանՀաւատ զվերակացուացն զսիրտս, ցրուեաց զանմիտ յԹագաւորին զխորՀուրդս և բարձրացոյց զանուն եկեղեցւոյ իւրոյ սրբոյ»։ Այս Համառօտութիւնն էր, զոր Խուժիկ, ըստ Փարպեցւոյն, կը պատմէր Հաւատացելոց․ զնոյն կը յիշէին ստէպ և կապեալ նա- խարարք, մանաւանդ Արշաւիր Կամսարական, որմէ իբր Թէ առնը- լով գրած է Փարպեցին.—«Նոյն խօսք և մխիթարութիւն էր յաւէտ կապելոց նախարարացն Հայոց յելս և ի մուտս իւրեանց, ի նստել ի տան և յառնել, ի տօնս և յամսագլուխս․ զոր և պատմեալ ան- յագ ցնծութեամբ զուարճացուցանէին նորոգելով զամենայն մեղ- կեալ միտս լսողացն, և Հաստատէին ի Հաւատս արդարութեան․ և մանաւանդ տէրն Արշարունեաց Կամսարականն Արշաւիր… պատ- մէր անձանձրոյթ Հանապազ։ Զոր և մեր յոլովագոյն լուեալ ի Հրա- շալի Կամսարականէն գրեցաք յօժարապէս Հոգալով․ զոր Թէպէտ ըստ ակարութեան մերոյ ոչ եղեաք բաւական յիշել զբովանդակն ի կարգի՝ այլ և ոչ ընդու գտեալ անյուշք յապաղեալ մոռացաք ինչ ծուլանալով»։*

**17**. *Մինչև ցայս վայր Փարպեցին։ Գտանք այժմ Եղիշէի, որոյ գլխաւոր տարբերութիւնները միայն խոստացանք յիշել։ Ինչպէս Փարպեցին, նոյնպէս Եղիշէ, որպէս ասէ՝ առաւ Ղևոնդեանց նա- Հատակութեան պատմութիւնն ի Խուժկէն, իբրև ականատես վկայէ, սա տարբերութեամբ, որ Փարպեցին առաւ որպէս Թէ լսելով ի բերանոյ Արշաւրի Կամսարականի, իսկ Եղիշէ նոյն իսկ Խուժկէն.— «Այս երանելի Խուժիկս որ արժանի եղև ի ծածուկ սպասաւոր լի- նել սրբոցն, որ ինչ ի մաՀուանէն և այսր ասացաւ դատակնիք վճռիս ասորիկ՝ սա երկրորդեաց մեզ զամենայն կարգաւ—զչարաչար քարշումն, և զՀարց և զփորձ դատաւորացն, և զիւրաքանչիւր ան- ձանց սրբոցն զպատասխանիսն, և զկատարումն մաՀուան նոցա, և զաՀագին արՀաւիրսն որ ․ի վերայ պաՀապանացն անկաւ, և զՀե- ծեծումն քննութեան նախարարացն երեցունց, և զամփոփումն սուրբ ոսկերացն նոցա»։ Գալով Խուժկին անձին և պաշտաման՝ Եղիշէ բո- լորովին կը տարբերի ի Փարպեցւոյն։ Ըստ Եղիշէի, ինչպէս յիշե- ցինք՝ Խուժիկ ոչ Թէ վաճառական էր, ըստ դիպաց իմն մտերմա- ցեալ Դենշապհոյ, որպէս պատմէ Փարպեցին, այլ էր արքունի զի- նուոր դաՀճաց դասէն, և իբրև այսպիսի՝ եկած էր երեք իշխանաց Հետ.—«Այր մի Խուժիկ անուն ի զօրացն արքունի, որ ի ծածուկ*

տունէր զքրիստոնէութիւնն և վիճակեալ էր ի դասս դաՀճացն, և կայր ի սպասու օրապաՀացն Հանդերձ գործիական տանջանարանօքն, ձեռն եմուտ ի մէջ գիշերին և խառնեցաւ ի դասս նոցա... և ոչ ոք ի նոցանէ եՀարց, եթէ Դու ո՞վ ես ընդ մեզ, ոչ ի տերանցն և ոչ ի սպասաւորացն»։ Եթէ Խուժիկ, որպէս ասէ Եղիշէ, «էր վիճակեալ ի դասս դաՀճացն» աւելորդ էր նոցա Հարցանել, թէ «Դու ո՞վ ես ընդ մեզ»։

Ոչ սակաւ կը տարբերին առ երկոսին և Հարցափորձք թէ ըստ կարգին և թէ մանաւանդ ըստ նիւթոյն։ Առ Փարպեցւոյն, ինչպէս տեսանք՝ ՎեՀդենշապուՀ և ընկերք նորա ի կողմանէ Թագաւորին կը Հրաւիրեն զքաՀանայս ի կրակապաշտութիւն, խոստանալով ներել նոցա և արձակել։ Առ այս կը պատասխանէ Յովսէփ կաթողիկոս, ցուցնելով թէ անՀնար էր նոցա ընդունել այն Հրաւէրը։ Յետոյ ՎեՀդենշապուՀ կը մատուցանէ նոյն յորդորն առանձինն Ղեւոնդայ, որ նոյնպէս կը մերժէ Համառօտիւ, ասելով թէ չէ արժան երկրաւոր դիւրութեան և փառաց Համար տալ յաւիտենականը, և թէ պատրաստ են մանաւանդ մեռանել և ազատել այս անցաւոր աշխարՀէս։ Յետոյ երբ ՎեՀդենշապուՀ դարձեալ կը ջանայ յորդորել զնոսա բերանով ՍաՀակայ, որ էր թարգման՝ ՍաՀակ յանձն չառնուր խօսել, նա մանաւանդ կը յաւելու թշնամանս ևս իշխանաց և Թագաւորին, ուստի և ՎեՀդենշապուՀ բարկանալով կը կտրէ սրով ՍաՀակայ բացուկը մինչև գօտին։

Առ Եղիշէի ևս նոյն Հրաւէր կը մատուցուի քաՀանայից յանուն Թագաւորին, այսինքն ընդունել կրակի պաշտօնը և արձակուիլ պատուով. բայց պատասխան տուողն է ոչ Յովսէփ կաթողիկոս, ըստ Փարպեցւոյն, այլ Ղեւոնդ երէց. որ կը խօսի երկայն բանիւք, բոլորովին աննման բանիցն՝ զոր Փարպեցին կը դնէ ի բերան Յովսեփայ։ Յետ Ղեւոնդայ կը խօսի ՍաՀակ արեգական և կրակի վրայ, փիլիսոփայելով երկար և յանդիմանելով կրակապաշտից կուրութիւնն Հեգնութեամբ և թշնամանօք, մինչ առ Փարպեցւոյն այս իմաստով խօսք ամենևին չկայ ՍաՀակայ բերանը դրուած։ Յետոյ Եղիշէ կը դնէ ի բերան ԴենշապՀոյ՝ ՍաՀակայ եպիսկոպոսի և Յովսեփայ վրայ գովեստ, և Ղեւոնդայ դէմ պարսաւ։ Առ այս կը պատասխանեն երկայն բանիւք նախ Յովսէփ և ապա մանաւանդ Ղեւոնդ Հոգևոր բժշկութեան օրինակաւ։ Փարպեցին չգիտեր ո՛չ այս գովեստն և պարսաւը, և ոչ Յովսեփայ և Ղեւոնդի պատասխաններն. չգիտեր նաև ո՛չ ՍաՀակայ դէմ վերջին խիստ Հարցափորձը, որով որպէս թէ կամէր ԴենշապուՀ ստուգել, թէ արդարև ՍաՀա՛կ աւերեց տաճարուշանն ի Ռշտունիս, և ոչ ՍաՀակայ երկայն և Հեգ-

նակոն պատասխանն, ընդ որ զայրանալով Դենշապուհ կտրեց սրով Սահակայ աջը թիկամբն հանդերձ։ Համառօտիւ, ինչ որ քահանայից հարցափորձին և պատասխաններուն վրայ գրուած է առ Փարպեցւոյն և առ Եղիշէի՝ չէ ամենևին միաբան։

Ցայտնի անմիաբանութիւն կայ ի մէջ Փարպեցւոյն և Եղիշէի նաև տանջանաց և սպանման եղանակին վրայ։ Ըստ Եղիշէի՝ նախ վեց վկայք միանգամայն պարանօք կը քարշուէին չարաչար, մինչև չմնալ խայծ ի մարմինս նոցա.—«Նախարարքն երեքեան հրամայեցին դահճացն իւրեանց կապել զոտս և զձեռս նոցա. և արկին պարանս երկայնս յոտս նոցա, և երկու երկու լծեցան և առին ի քարշ։ Եւ այնպէս ձգեցին և ճողքեցին ընդ ապառաժ տեղիսն քարշելով, զի ամենևին խայծ ոչ մնաց ի մարմինս երանելեացն». ուր ըստ Փարպեցւոյն՝ Ղևոնդ միայն կը քարշուի, և Ղևոնդայ միայն և ոչ այլոց քարշուելուն պատճառը կու տայ Փարպեցին, վասն զի «զերանելի այրն Աստուծոյ զՂևոնդ առաւելագոյն ասէին ամենայն Պարսիկք խրատտու և պատճառ լինել ամենայն իրացն Վարդանայ և գործոցն՝ որ ի ժամանակին յայնմիկ գործեցան յաշխարհիս Հայոց»։ Ըստ Եղիշէի՝ մին ի քահանայից, Արշէն, կը պրկուի այնպէս պրնգով՝ մինչև կը ճարճատին ոսկերքն.—«Հրամայեաց զմի ոմն ի կրօսերոտգունիցն յառաջ մատուցանել, երէց մի Արշէն անուն. կապեցին զոտսն և զձեռսն, և մեծաւ ուժով պրկեցին, մինչև ճարճատիւն հատաւ ամենայն ջղացն, և այնպէս կայր մեծ ժամս յանհնարին պրկոցսն». առ Փարպեցւոյն չիք այսպիսի ինչ յիշուած։ Ըստ Եղիշէի՝ երբ Դենշապուհ և ընկերքն կը լսեն նշաններն, որ որպէս թէ կատարուեցան յետ մահուան սրբոցն՝ կը խօսին այսպէս. «Զինչ գործեսցուք, զինչ արասցուք վասն անքնին աղանդոյն քրիստոնէիցն. քանզի մինչդեռ կենդանի էին՝ զարմանալի էր կեանք նոցա. ընչատեացք էին իբրև զանկարօտս, սրբասէրք էին իբրև զանմարմինս, անաչառք էին իբրև զարդարադատս, աներկիւղք էին իբրև զանմահս։ Եթէ զայս ամենայն ասեմք իբրև զոգիտաց և իբրև զյանդգնելոց, իսկ զայն զի՞ առնիցեմք, զի ցաւոտք ամենայն ի կարաւանի աստ նոքօք առողջանան. և կամ որ մեծս է քան զամենայն, ո՞յր ուրուք դի կանգնեալ երևեցաւ ի կենդանեաց, կամ բարբառ բանից ո՞վ լուաւ ի նմանէ։ Զի սուտ չեն մեր սպասաւորքն. մեր մեզէն իսկ հասեալ է ի վերայ ստուգութեան սոցա։ Եւ եթէ կամեցեալ էր սոցա մարմնաւոր ինչ ագահութիւն ի ներքս խառնել՝ սակաւ մի ակնարկէին քրիստոնէից ի կարաւանիս, զկշիռ իւրաքանչիւր մարմնոյ նոցա ոսկի առնուին։ Դարձեալ և արքդ որ ի դիւէ չարչարեցան, զի յայնժամ ցաւոտք չէին և մեք գիտեմք. յայտ է․

եթէ այսօր նշան մեծ երևեցաւ։ Եթէ լուռ լինիմք՝ այսպէս մեզ և անձանց մերոց կասկած իսկ է, և եթէ տանիմք զդոսա առաջի թագաւորին, լսելով նորա ի դոցանէ զայդ ամենայն մեծամեծ սքանչելիս՝ գուցէ և օրինացս մերոց քակտումն ինչ հասանիցէ»։ Այսքանք, որ կը ցուցնեն զարմացումն մեծ ի նպաստ քրիստոնէութեան՝ անտարակոյս գիւտ են Եղիշէի, որ սովոր է այս ոճով տալ խօսել թշնամեաց քրիստոնէութեան։ Մոգպետն տեսնելով իշխանաց այս երկմիտ տարակոյսը՝ կը պատասխանէ։ «Ետ պատասխանի մոգպետն և ասէ ցնոսա. Ո՛չ զիս ոստիկան արարին ի վերայ ձեր երկոցունցդ. զի՞ այդպէս նեղեալ տագնապիք յանձինս ձեր. դուք զգործ ձեր կատարեցէք, և զհրամանն արքունի ի գլուխ տարայք։ Արդ եթէ համբաւդ այդ յայտնեսցի, և հարցափորձ ինչ լինիցի առաջի արքային՝ այդ խնդիր մեր մոգաց է. դուք անհոգ լերուք, և մի ինչ ածէք զմտաւ»։ Յայսմ ևս չէ միաբան Փարպեցին. առաջին մասն, իշխանաց խօսելն ընդ միմեանս համբաւեալ նշանագործութեան վրայ՝ է տարբեր պատմուած. իսկ վերջին մասն, այն է քաջալերել մոգպետին զիշխանսն, փարատելու համար զերկիւղ և զտարակոյս նոցա՝ բոլորովին կը պակսէ առ Փարպեցւոյն։ Այսչափ տարբերութիւն բաւական է կասկածելի ընել պատմութեան աղբիւրը. միթէ Խուժիկ այլազգ պատմեց Արշաւրի Կամսարականի, որմէ որպէս թէ առած է Փարպեցին, և այլազգ Եղիշէի, որ կը կարծեցունէ թէ առաւ ուղղակի Խուժկէն։

Մեծագոյն տարբերութիւն ի մէջ Փարպեցւոյն և Եղիշէի՝ է մոգպետին դարձը, որ է նմանութիւն դարձի բանտապետին Գործոց առաքելոց (Գործ. ԺԶ. 25—34), և զոր չգիտեր Փարպեցին։ Այս մեծ տարբերութիւնը բաւական է տալ կարծել, թէ երկու պատմիչք, Փարպեցին և Եղիշէ, տեսած չեն զիրար։ Ըստ Եղիշէի՝ նախարարք Հայոց և քահանայք տարուելով ի Նիւշապուհ՝ կը յանձնուին քաղաքին մոգպետին, անուանի մոգութեամբ, որ սաստիկ կը տանջէ զկապեալսն, մանաւանդ զքահանայս, զատելով զնոսա նախարարներէն և դնելով ի խոնաւ և ի մութ բանտի, տալով նոցա սակաւ մի հաց և ջուր։ Յետ նեղելոյ զնոսա այսպէս իբրև քառասուն օր, տեսնելով նոցա պնդութիւնը՝ կը կարծէ, թէ սպասաւորներէն մին կու տար նոցա գաղտ ուտել, ուստի կ՚երթայ կնքել անձամբ զդուռն բանտին, և հաւատարիմ մարդոց ձեռօք կու տայ նոցա ռոճիկ։ Սակայն պահապանք տեսնելով զնոսա տակաւին առողջ և զուարթ՝ զարմանօք կը պատմեն մոգպետին, որ անձամբ երթալով գիշերի և նայելով բանտին պատուհանէն՝ կը տեսնէ զնոսա լուսոյ մէջ. կը հիանայ և իսկոյն կը հրամայէ հանել սուր-

քերն ի բանտէն և պահել զնոսա ցամաք վերնատուն մի. յետոյ ինքն անձամբ երթալով յայցելութիւն նոցա՝ կ'սկսի աղօթել ընդ նոսա։ Յետ աղօթիցն կը ննջեն, բայց մոգպետն որ արթուն էր՝ կը տեսնէ յանկարծ բոլոր տունը լուսաւորուած, և լուսեղէն սանդուղներ, ընդ որս կ'ելլէին յերկինս գունդ գունդ զինուորներ, որոց մէջ տեսաւ յանուանէ զՎարդան ուրիշ ընկերներով, որ կը բերէին ինն պսակ։ Ի վաղիւն մոգպետը կը տանի սուրբերն հանդերձ նախարարօք ի տուն իւր, ուր կ'ուղղուի աւազան, և մոգպետը կը մկրտուի հանդերձ ընտանեօք։ Յետոյ կը հաղորդուին կենարար խորհրդոյն, և կը բազմին ի սեղան մեծ ուրախութեամբ։ Ի ժամ ճաշոյն սուրբն Յովսէփ իբրև երկնաւոր ազդեցութեամբ կ'իմացունէ, թէ վաղիւ նոյն ժամուն պիտի ընդունէին մարտիրոսութեան պսակը։ Բոլոր գիշերը կ'անցունեն աղօթիւք, և ի ծագել առաւօտուն դահիճներն հասնելով բանտին դուռը՝ կը մտնեն ներս և կը գտնեն զմոգպետն ընդ նոսա։ Զարմանք է որ քահանայք, որ տարուած էին հանդերձ նախարարօք մոգպետին տունը երեկոյին՝ առաւօտուն, ի գալ դահճաց, կը գտնուին բանտին մէջ մոգպետին հետ իբրև կապեալ։ Զիարդ և իցէ՝ այս լուրը կը հասնի բերանով Դենշապհոյ յունկն Թագաւորին, որ կը հրամայէ նմա կոչել զմոգպետն ի հարցափորձ, և եթէ գտնէ զնա յամառեալ՝ տալ սպանանել գաղտ, նոյնպէս կորուսանել զքահանայսն։ Ըստ հրամանին կը կատարուի գործն։ Ահա բանք Եղիշէի. «Մոգպետն (նիւշապուհ քաղաքին) որում յանձն արարեալ էր զնոսա (Թագաւորն)՝ բազում անգամ առաւել քան զհրամանն արքունի չարչարեալ էր զնոսա, քանզի իշխան դենպետ էր Ապր աշխարհին, և առաւել ջերմագոյն էր ի մոգութեան։... Եդ սնոտի կարծիս ի մտի՝ անդադար չարչարել զնոսա, զի թերևս առ չժուժալ մարմնոյն նեղութեանց՝ լուայց ի նոցանէ բանս ինչ ողոքանաց։ Վասն որոյ զատ և որոշեաց ի նախարարացն զքահանայսն, և հեռացոյց ի նոցանէ բացագոյն, և արկ զնոսա ի ներքնատուն մի գէճ խաւարչտին։ Եւ հրամայէր վեցաւն երկու քաշկէնս ժամէ ի ժամ, և դորակ և կէս ջուր, և ամենևին ոչ զոք թողոյր մօտ երթալ ի դուրս բանտին։ Եւ իբրև աւուրս քառասունս այսու նեղէր զնոսա, և ոչ լուաւ ի նոցանէ բան թուլութեան՝ այլ իմն ած զմտաւ, եթէ ոք յիւրոց ծառայիցն գաղտ եգիտ ինչ ի նոցանէ, և ի ծածուկ տացէ նոցա կերակուր։ Ինքն երթեալ կնքէր զերդ և զդուռն բանտին, և զկարգեալ ռոճիկն տայր յիւր հաւատարիմսն տանել նոցա. և արար զայս աւուրս հնգետասան։ Սակայն և այնպէս երանելիքն ոչինչ շտապեալ տագնապեցան, այլ մեծաւ համբերութեամբ տանէին զճգնութիւնն, և ան-

դադար սաղմոսիւք կային ի հանապազորդ պաշտամանն, և ի կատարել աղօթիցն զուարթագին գոհանալով՝ սակաւիկ մի հանգչէին ի գետնախշտի յանկողինսն։ Իսկ պահապանքն որ ի վերայ կապելոցն կային՝ յոյժ էին զարմացեալ ընդ առողջութիւն անհիւանդութեան նոցա, իբրև լսէին զանդադար հնչումն ձայնիցն։ Վասն այնորիկ պատմեցին յականջս մոգպետին և ասեն. Ոչ են արքն այն լոկ առանց մեծի զօրութեան. զի եթէ պղնձի մարմինս ունէին նոքա՝ արդ լուծեալ էր ի գէճ խոնաւոյ անտի։ Բազում ժամանակք են մեր, զի յանձն է մեզ պահպանութիւն բանտիս. ոչ յիշեմք եթէ ի կապելոց ոք ամսօրեայ ժամանակ կեցեալ է ի տանդ յայդմիկ։... Զահի հարեալ եմք և յոյժ երկնչիմք, յորժամ տեսանեմք զայնպիսի անհնարին նեղութիւնս։ Եւ իբրև զայս լուաւ մոգպետն՝ յարուցեալ ինքնին երթայր ի մէջ գիշերին յերդ բանտին։ Եւ հայեցեալ ի ներքս ընդ մութ գիշերոյն, այն ինչ լինէր նոցա ի պաշտամանէն հանգչել՝ տեսանէր զանձն իւրաքանչիւր կապելոցն, զի իբրև զկանթեղ անշիջանելի վառեալ բորբոքէր։ Զահի մեծի հարաւ, և ասէր ընդ միտս իւր. Զինչ է այս մեծ սքանչելիքս. աստուածք մեր ուրեմն եկեալ իջեալ են ի բանտս, և նոցա փառաւորութիւնն լուցեալ բորբոքի։ Եւ եթէ նոքա առ սոսա ոչ մերձենան՝ մարդոյ լոկոյ անհնարին է զայսպիսի պայծառութիւն լուսոյ զգենուլ։ Իմ այսպէս լուեալ էր վասն կեշտիս այսորիկ, եթէ առ յոյժ չիմարութեանն մոլորեալ են, և ստութեամբ կերպարանէին յաչս տգէտ մարդկան. թերևս և այս տեսիլ այնպիսի ինչ է։ Եւ ոչ կարէր համօրէն կալ ի վերայ իրացն երևմանն։ Եւ մինչդեռ յայսմ մտաց խորհրդի էր՝ դարձեալ սուրբքն յիւրաքանչիւր խշտեկացն կանգնեցան կացին ի սովորական պաշտամանն։ Յայնժամ ճշմարտեալ գիտաց մոգպետն, եթէ ոչ այլ ընդ այլոյ տեսանէր որ երևեցաւն նմա, այլ ի նոցունց յանձանց փայլէր լուսաւորութիւնն։ Յայնժամ կրկին անգամ զահի հարաւ և ասէ. Ո՞ւմ ի կապելոցն եղև այսպիսի յայտնութիւն. ես և ոչ զմի ոք ոչ գիտեմ, և ոչ լուեալ է իմ ի հարցն յառաջնոց։ Եւ քանզի անհնարին շարժեցաւ ի մեծ սքանչելեացն, և դողային ամենայն մարմինքն՝ և թմբրեալ կիսամեռ լինէր ի վերայ տանեացն մինչև յառաւօտն. և ի ծագել լուսոյն իբրև զբազմօրեայ հիւանդ յարուցեալ երթայր ի վանս իւր, այլ և ոչ ումեք իշխեաց ամենևին պատմել զոր ինչ ետեսն։ Կոչեաց առ իւր զպահապանսն և ասէ ցնոսա. Երթայք հանէք զկապեալսն ի վերնատուն մի ցամաքագոյն, և անդ պահեցէք զնոսա զգուշութեամբ, որպէս և ասացէքն։ Մի ումն ի դահճաց անտի, իբրև լուաւ զհրամանս մոգպետին՝

փուլթով ընթացեալ երթայր, իբրև մեծ իմն աւետիս տանէր նոցա։ Հրամայեաց ձեզ, ասէ, ելանել ի ցամաք վերնատուն մի. արիք վաղվաղակի և մի հեղգայք, քանզի և մեք իսկ պաղատեցաք վասն ձերոյ տառապանացդ։ Իսկ սուրբն Յովսէփ հեզաբար սկսաւ խօսել ընդ դահճապետին և ասէ. Երթ և ասա ցխմար առաջնորդն ձեր. Չէ լուեալ քո վասն հանդերձեալ գալստեան Տեառն մերոյ և կամ վասն մերոյ հրաշակերտ շինուածոցն, որք մեզ կան պահին ի սկզբանէ պատրաստութիւնքն, վասն որոյ դիւրաւ համբերեմք մեծի նեղութեանս առ սէր այնր լուսոյ զոր տեսանեմք։... Իբրև լուաւ զայս ամենայն բանս մոգպետն ի դահճապետէ անտի՝ խռովեցաւ, պղտորեցաւ ի միտս իւր, և հատաւ քուն յաչաց նորա զբազում գիշերս։ Իսկ յաւուր միոջ յերիկուն պահուն յարուցեալ երթայր առ նոսա միայնիկ լռիկ, և ոչ զոք առնոյր ընդ իւր ի սպասաւորացն։ Եւ իբրև եհաս ի դուրս տանն՝ հայէր ընդ ծակ մի ի ներքս և տեսանէր ըստ առաջին տեսլեանն. բայց նոքա ի քուն կային խաղաղիկ։ Հեզաբար կարդաց յանուանէ զեպիսկոպոսն, քանզի քաջ իսկ գիտէր պարսկերէն։ Եկն ի դուրս և հարցանէր. Ո՞վ ես դու։ Ես ինքն իսկ եմ, ասէ, կամիմ ի ներքս մտանել և տեսանել զձեզ։ Եւ իբրև եմուտ ի մէջ սրբոցն՝ ոչ ևս երևէր նմա այն նշանն. և պատմեաց նոցա զերիցս երևումն սքանչելեացն։ Ետ պատասխանի Ղևոնդ երէցն և ասէ. Աստուած որ ասաց ի խաւարի լոյս ծագել... այսօր ծագեաց ի խաւարեալ միտս քո, և բացան աչք կուրացեալ ոգւոյդ... փութա, մի հեղգար, գուցէ դարձեալ կուրացեալ ընդ խաւար գնայցես։ Եւ զայս իբրև ասաց՝ յոտն կացին ամենեքեան, ասելով զքառասներորդ երկրորդ սաղմոսն. Առաքեա, Տէր, զլոյս քո և զճշմարտութիւն քո, զի նոքա առաջնորդեսցեն և ածցեն զմեզ ի լեառն սուրբ և ի յարկս քո։... Իսկ որ ձրին եգիտ զաստուածատուր շնորհսն՝ սկսաւ և նա առանձինն ասել. Տէր լոյս իմ և կեանք իմ , ես յումմէ երկեայց. Տէր ապաւէն կենաց իմոց, ես յումմէ դողացայց։... Դու Տէր ամենայնի... մի որոշեր զիս ի սուրբ գառանցդ յորս խառնեցայ։... Եւ զայս իբրև ասացին՝ նմին իսկ ետուն կատարել զաղօթսն, և այնպէս խաղաղացեալ կացին ի քուն ամենեքեան մինչև ի ժամ առաւօտուն։ Իսկ նորա յոտն կացեալ և ի քուն ոչ մտանէր. այլ զձեռս իւր ի վեր ամբարձեալ կայր յաղօթս։ Եւ մինչդեռ ընդ երդ պշուցեալ հայէր՝ յերկինս՝ յանկարծակի տաւնլի եղև ի լուսոյն. և երևեցան նմա սանդուղք լուսեղէնք, որ կանգնեալ էր (էին) յերկինս յերկրէ, և գունդք գունդք զօրաց ելանէին ի վեր. և էր ամենեցուն տեսիլն նոր և չքնաղ և ահաւոր և սքանչելի իբրև զտեսիլ հրեշտակի։ Ունէր և գթիւ համարոյ է

միտս իւր զիւրաքանչիւր գնդիցն զոր տեսանէր, էր որ զհազարի, էր որ զերեսուն և զերից, էր որ զերկերիւրոց և զերեքտասանից։ Եւ այնպէս մօտագոյնս մերձենայր՝ մինչև ճանաչել նմա զերիս ի նոցանէ—զՎարդան և զԱրտակ և զԽորէն. և ունէին ինն պսակ ի ձեռսն, խօսէին ընդ միմեանս և ասէին. Ահա եկն եհաս ժամ. զի և սոքա խառնեսցին ի գունդս մեր։... Եւ որում ոչ ևս մնայաք՝ եկն երևեցաւ և խառնեցաւ, և եղև իբրև զմի ի զինուորաց Քրիստոսի։ Այս երիցս անգամ երևեցաւ չքնաղ տեսիլս առնն երանելւոյ։ Զարթոյց զսուրբսն ի քնոյ անտի և պատմեաց նոցա զամենայն տեսիլն կարգաւ։ Իսկ նոքա յարուցեալ կացին յաղօթս... գուծ ողոքանաց արկանէին առաջի բարերարին, զի լսելի լիցի ձայն պաղատանաց նոցա, և հաստատուն կացցեն ի վիշտս ճգանցն, զի մի զրկեսցին ի ցանկալի պսակացն զոր ունէին սուրբքն ի ձեռս իւրեանց, որպէս և ազդեցաւ նոցա ի ձեռն Հոգւոյն սրբոյ, զի մերձեալ էր ժամանակ կոչման նոցա։... Եւ քանզի ինքն իսկ մօգպետն իշխան էր աշխարհին, և նմա յանձն արարեալ էր զկապեալս քաղաքին՝ վասն այնորիկ և համարձակութեամբ ընդ առաւօտն հանեալ տանէր յապարանսն իւր։ Լուանայր և սրբէր զնոսա ի չարչարանաց բանտին, առնոյր զջուր լուացման սրբոցն և արկանէր զիւր մարմնովն։ Ուղղէր ի տան իւրում աւազան, և ընդունէր ի նոցանէ զսուրբ մկրտութիւնն. հաղորդէր ի կենդանարար մարմինն և ի քաւիչ արիւնն Տեառն։... Դնէր և ըստ մարմնոյ առաջի նոցա սեղան կերակրոյ, և մխիթարութեան բաժակ մատուցանէր նոցա, և միաբանէր ընդ նոսա հացին օրհնութեան։...Զգիշերն ամենայն սաղմոսիւք ի գլուխ տանէին. իսկ ի ժամ առաւօտուն ասէին ամենեքեան. Ծագեա, Տէր, զողորմութիւնս քո՝ ոյք ճանաչեն զքեզ, զարդարութիւնս քո՝ ուղիղ են սրտիւք։ Եւ անդէն վաղվաղակի հասին դահիճքն ի դուռն բանտին. մտին ի ներքս և տեսին, զի որ յառաջ մօգպետն էր, և նմա իսկ յանձն արարեալ էր պահել զնոսա՝ նստէր ի մէջ նոցա և լսէր ի նոցանէ, նա և քաջալերէր զնոսա չերկնչել ի մահուանէ։ Իբրև տեսին զմեծ սքանչելիսն դահիճքն՝ յոյժ զարմացան ընդ իրսն, այլ ոչինչ իշխէին հարցանել ցնա. բայց չոքան և պատմեցին Դենշապհոյ, որում յանձն արարեալ էր զչարչարանս սրբոցն։ Իսկ նա իբրև լուաւ ի դահճացն արքունի՝ զահի մեծի հարաւ ի միտս իւր։... Ի ծածուկ խօսէր ընդ մօգպետին... և իբրև ստուգեաց, եթէ ոչ քակտի ի սրբոցն հաւանութենէ՝... փութացաւ, և ինքն երթեալ պատմէր թագաւորին զամենայն որպէս զիարդ լուաւ ի նմանէ։ Ետ պատասխանի թագաւորն և ասէ ցԴենշապուհ. Մի՛ ոք ամենևին լուիցէ զայդ ի քէն, մանաւանդ վասն

տեսլեանն մեծի որ երևեալ է նմա։… Եւ այժմ իմ է քեզ երդումն տուեալ յանմահ գիսն. Նախ զդառնացեալ ծերն կոչեա առաջի քո։ Եթէ հաւանեսցի սիրով և զղջացեալ ապաշաւեսցէ՝ մեծարեսջիր զնա պատուով ըստ առաջին կարգին. ապա թէ ոչ հաւանեսցի և ոչ կամեսցի անսալ բանից իմոց՝ յարուսջիր ի վերայ նորա բազում ամբաստանս յաշխարհէ անտի, զի վնասակար գտցի յերս արքունի… և ընկալցի զմահ թշուառութեան։… Եւ նստաւ Դենշապուհ արտաքոյ բանակին յատենի, հեռի երկոտասան հրասախաւ։ Հարցանէր ցմոգպետն և ասէր. Իշխանութիւն առի վասն քո, ոչ միայն բանիւ հարցանել, այլ և ամենայն հարուածովք տանջանաց։ Մինչև ձեռն արկեալ է իմ ի քեզ՝ ընկալ զմեծարանս, խնայեա ի պատուական ալիսդ. թող անդր ի բաց զքրիստոնէութիւնդ, զոր ոչ ունէիր ի բնէ, և դարձիր անդէն ի մոգութիւնն։ Եւ պատասխանի երանելին և ասէ. Աղաչեմ զքեզ, տէր, որ յառաջ իբրև զհարազատ եղբայր հաստատեալ էիր յաչս իմ, և այսօր թշնամի կատարեալ. մի՛ ըստ առաջին սիրոյն գթար դու յիս, այլ կատարեա ի վերայ իմ զկամս չարութեան թագաւորին ձերոյ. և որպէս առեր իշխանութիւն ի վերայ իմ՝ դատեա զիս։ Յայնժամ իբրև ետես Դենշապուհ, եթէ առ ոչինչ զսպառնալիսն արքունի համարեցաւ, և ոչ ողոքանաց երբեք ինչ արար, և քան ի ծածուկ՝ յայտնի ևս կամէր զի խօսեսցի՝ կատարեաց ի վերայ նորա ըստ խրատուն արքունի. գաղտագողի ընկեցաւ նա ի հեռաւոր օտարութիւն»։

**18.** Որչափ և ջանան Փարպեցին և Եղիշէ հաւատացուցանել մեզ, թէ վկայաբանութիւնն Ղևոնդեանց իւր բոլոր մասերովն, երկայն հարցումներով, մանր մանր պատասխաններով, լի մանաւանդ ի վեր քան զբնութիւն նշանօք, է արդեամբ կատարուած, և ականատես, ականջալուր վկայէ, որպիսի էր անծանօթն Խուժիկ, աւանդուած՝ գործն ինքնին բաւական է ցուցնել, թէ վկայաբանութիւնն այն է բարեպաշտ քրիստոնէէ յօրինեալ հոգևոր վէպ, ուր Խուժիկն ոչ այլ ինչ է՝ եթէ ոչ վիպասանական անձն։ Զայս կը թուի ակնարկել ակամայ Փարպեցին յասելն, թէ «զանուն նորա ոչ ոք հոգացեալ պատմեաց մեզ, այլ ամենագէտն գրեալ պահէ յօր մեծ այցելութեան». ապա էր նա անծանօթ ոք, և Խուժիկն է լոկ պիտակ անուն։ Աւելի մեծ տարակոյս գոյութեան Խուժկին այն է մանաւանդ, որ այն վկայաբանութենէն դուրս յիշատակութիւն չունինք ուրեք այս անձին վրայ։ Եղիշէի սա վկայութեան մէջ.—«Այս երանելի Խուժիկս երկրորդեաց մեզ ամենայն կարգաւ», եթէ մեզն առնունք Եղիշէի վրայ այնպէս, որպէս թէ Եղիշէ ուղղակի Խուժկէն լսելով գրեց՝ ապացոյցն չհամարուիր դարձեալ վաւեր, այնու

նի Եղիշէ, ո՛ ոք և է—ատենադպիր Վարդանայ, միայնակեաց, եպիսկոպոս կամ թերևս պիտակ անուն՝ կասկածելի է անաչառ քննադատութեան առջև իւր Պատմութեան կարկատուն բնութեան համար։

**19.** Փարպեցին և Եղիշէ նոր յաւելուածով, դարձեալ մեծ տարբերութեամբ, կը պատմեն Աբրահամու և Խորենայ խոստովանողական կեանքն յետ նահատակութեան Ղևոնդեանց։ Այս երկու երիցունք, որոց, ինչպէս պատմեցինք, չտրուեցաւ թոյլ երթալ զհետ վարդապետաց իւրեանց՝ մնացած էին ի Նիւշապուհ։ Ըստ Փարպեցւոյն՝ յետ դարձին Յազկերտի ի Վրկանս զկնի ձախող պատերազմին, երբ թոյլ տրուեցաւ սպասաւորաց նախարարաց և այլոց որ էին ընդ նոսա երթալ յո՛ և կամէին՝ Աբրահամ և Խորէն երթալով ի Վրկանս, ուր էր յայնժամ Դենշապուհ՝ կը խնդրեն ի նմանէ տալ նահատակել և զնոսա ըստ օրինակին վարդապետաց իւրեանց. և Յազկերտ կը հրամայէ պաշտօնէին՝ ստիպել զնոսա յուրացութիւն, և եթէ չանսան՝ խեղելով ղրկել զնոսա յԱսորեստան ի մշակութիւն արքունի։ Դենշապուհ յետ կարճ հարցափորձի գտնելով զնոսա յամառ՝ կը ղրկէ յԱսորեստան ականջատ։ Խորէն կը մեռնի յետ ամաց ինչ, իսկ Աբրահամու թոյլ կը տրուի Ասորեստանի քրիստոնեանեբէն ողորմութիւն ժողովելով տանել նախարարաց, և ի վախճանի կ'ընդունի հրաման դառնալ ի Հայս, ուր իբրև արդարև խոստովանող ընդունուելով պատուով՝ կը ձեռնադրուի եպիսկոպոս Բզնունեաց, և կը վախճանի ի բարւոք ծերութեան.—«Մտեալ թագաւորին Յազկերտի (ի դարձին ի պատերազմէն)... յոստանն Վրկան՝ համարձակութիւն տայր նախարարացն Հայոց որք ի դղեկին էին ի կապանս (ի Նիւշապուհ)՝ արձակել զմանկունս իւրեանց և կամ զայլ ոք որ ընդ նոսա էին՝ ի պէտս արքանեկութեան յո՛ և կամիցին։ Զոր լուեալ երանելի երիցունքն Խորէն և Աբրահամ՝ փութով ի Վրկան հասանէին, և անկեալք հրապարակաւ առաջի ամբարպետին Դենշապհոյ՝ բողոք բարձեալ ասէին... Դու բռնաբար հրամայեցեր արգելուլ զմեզ ի Նիւշապուհ... և սպանէք զվարդապետս մեր. կամեցարո՛ւք և ի վերայ մեր տալ զնոյն հրաման։... Մտեալ ի ներքս (Դենշապուհ) պատմէր թագաւորին Յազկերտի զամենայն զբանս և զխնդիրս երանելի երիցանցն. և թագաւորն հրաման տուեալ ասէ... Երկիր պագցեն արեգական, և պատուեալ զկրակն՝... արձակեսցին յաշխարհն իւրեանց. ապա թէ չհաւանեսցին՝ պատուհաս կրեսցեն խեղութեամբ, և երթեալ յԱսորեստան մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն։... Եկեալ Դենշապուհ ասաց ցերանելի երիցունսն... զհրաման թագաւորին... և լուեալ պատասխանի աներկիւղ... կատարեաց զհրամայեալսն ի թագաւորէն. կտրեալ զեր-

Կոցունց ականջսն՝ ետ տանել յԱսորեստան ի գաւառն որ անուանեալ կոչի Շաբուլ (Շահուղ՝ ըստ Եղիշէի), կալ անդ նոցա ի հարկի, և առնել մշակութիւն արքունի։... Եւ լուեալ զայս հաւատացելոց աշխարհին՝... ընդ առաջ ելին նոցա խնդութեամբ... Նա և զկարասի իւրաքանչիւր ուրուք բերեալ դնէին առ ոտս երանելեացն։... Երանելի երիցանցն ընկալեալ յընծայիցն հաւատացելոց... տային տանել կապելոց նախարարացն Հայոց։... Էր զի երանելի երէցն Աբրահամ առեալ զտուրս հարաւային կողմանցն Ասորեստանեացն տարեալ մատակարարէր կապելոց նահատակացն։... Կեցեալ ամս երանելոյ երիցուն Խորենայ՝ անդէն յԱսորեստանի վախճանէր։ Իսկ երանելի երէցն Աբրահամ երաշխաւորութեամբ հաւատացելոց աշխարհին, որք զտունս իւրեանց և զարարս փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս, արձակեալ ի Հայս... և ձեռնադրեալ յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց՝... վախճանէր ի նմին կարգի ի բարւոք ծերութեան»։

**20.** Ցայսմ ևս կը տարբերի ի Փարպեցւոյն Եղիշէ։ Ինչպէս տեսանք առ Փարպեցւոյն՝ Աբրահամ և Խորէն՝ երթալով անձամբ առ Դենշապուհ ի Վրկանս, ուր կը գտնուէր նա յետ դարձի թագաւորին ի պատերազմէն Քուշանաց՝ խնդրեցին նահատակել զնոսա ևս, և Դենշապուհ հրամանաւ թագաւորին կտրելով զականջս նոցա՝ ղրկեց ի գործ արքունի մշակութեան յԱսորեստան, ուր մնացին նոքա շատ տարիներ, մինչև մեռաւ Խորէն. իսկ Աբրահամ երկրին քրիստոնեաներուն փրկանօք արձակուեցաւ ի Հայս, և եղաւ եպիսկոպոս Բզնունեաց։ Առ Եղիշէի չիք յիշատակութիւն Դենշապհոյ. դահճապետ ոմն գալով ի Նիւշապուհ յետ նահատակութեան Ղևոնդեանց՝ կը տանջէ շատ քրիստոնեաներ, կը կտրէ ոմանց քիթը, ոմանց ականջներն, և կը ղրկէ յԱսորեստան ի մշակութիւն արքունի։ Գալով առ Խորէն և Աբրահամ՝ կը հարցունէ, թէ ո՛վ են, և իմանալով թէ էին յաշակերտաց Ղևոնդեանց՝ կը դատէ զնոսա յանցաւոր իբրև ապստամբներու աշակերտներ, և լսելով ի նոցանէ խիստ պատասխաններ, զորօրինակ «շուն անպիտան», «ընդ վայր հաջող», «որդի սատանայի», այլովքն հանդերձ՝ կը բարկանայ, և տալով քարշել զնոսա և ապա գան հարկանելով սաստիկ՝ կը թողու կիսամեռ. ի վախճանի կտրելով զականջս նոցա՝ կը ղրկէ զնոսա յԱսորեստան ի գործ բռնի մշակութեան, յօրինակ այնոցիկ որ կը հակառակին կամաց թագաւորին։ Բայց զարմանալին այն է, որ Եղիշէ յետ պատմելոյ զայս՝ կը յաւելու, թէ դահճապետն պատուիրեց զինուորներուն՝ Ասորեստան հասնելով թողուլ զնոսա երթալ յո՛ և կամին։ Այս ևս զարմանալի է, որ ըստ Եղիշէի Աբրա-

համ և Խորէն ունենալով այս ազատութիւնը՝ փոխանակ երթալու ի Հայս՝ կը մնան յԱսորեստան շատ տարիներ, մինչև Խորէն կը մեռնի օդոյն սաստիկ ջերմութենէն. իսկ Աբրահամ ի թախանձելոյ կայսեր նախարարաց կը դառնայ ի Հայս ի մխիթարութիւն ընտանեաց և ազգականաց նոցա։ Եթէ Աբրահամ և Խորէն ընտրեցին մնալ յԱսորեստան, երկրին քրիստոնէից կողմէն ընծաներ զրկելու կամ անձամբ տանելու համար կայսեր նախարարաց՝ նոյն բանը կրնային ընել նաև երթալով ի Հայս. և նախարարք եթէ թոյլտուութիւն ունէին դուրսէն նպաստ ընդունելու՝ կրնային ընդունել նաև իրենց երկրէն։ Դարձեալ՝ կայսեր նախարարք ինչպէս կրնային բնաւ աշխատութեան դատապարտեալ գերի մը ստիպել երթալ իւր երկիրն առանց հրամանի տէրութեան։ Փարպեցւոյն պատմութիւնն աւելի բնական է։ Ըստ Փարպեցւոյն՝ Խորէն և Աբրահամ ստիպեալ էին իբրև գերի մնալ յԱսորեստան. երկրին հաւատացեալներէն ոմանք կամաւոր ընծաներ միայն կը զրկէին, էր զի Աբրահամ անձամբ կը տանէր. այսչափ արտօնութիւն կրնար ունենալ Աբրահամ. իսկ Աբրահամու դարձն ի Հայս՝ ըստ Փարպեցւոյն եղաւ հրամանաւ տէրութեան, այսինքն քրիստոնեայք երկրին փրկանք տալով ազատեցին զնա։ Նաև Աբրահամու եպիսկոպոսութենէն Բզնունեաց չունի տեղեկութիւն Եղիշէ. ըստ պատմութեան սորա՝ Աբրահամ յետ դարձին ի Հայս ոչ միայն չվարեց հրապարակական պաշտօն, որպիսի էր այնպիսի մեծ նահանգի մը եպիսկոպոսութիւնն, այլ մանաւանդ երեք ընկերներով առանձնանալով անապատ տեղ՝ մեռաւ ճգնութեամբ։ Ահա բուն իսկ Եղիշէի բանք, զորս համառօտելով կը դնենք. «Իսկ աշակերտք երանելեացն ի կապանս կային ի քաղաքին։ Եկն դահճապետ մի արքունի և եհան ի նմին քաղաքէ ասորեստանեայս քրիստոնեայս արս հինգ... չարչարեաց զնոսա դանիւ... կտրեաց զնոցա ունչս և զականջս և ետ տանել յԱսորեստան, զի կայցեն ի մշակութեան արքունի։... Եկն դարձեալ նոյն դահճապետն առ աշակերտս սուրբ սպանելոցն, ընտրեաց երկուս ի նոցանէ մեկուսի յայլոցն և ասէ ցնոսա. Զինչ անուանք են ձեր։ Ետ պատասխանի մինն և ասէ. Առ ի ծնողաց՝ ինձ Խորէն, և դմա Աբրահամ. իսկ ըստ շնորհատուր կարգիս՝ ծառայք Քրիստոսի եմք և աշակերտք երանելեացն զորս սպանէք։ Ետ պատասխանի դահճապետն և ասէ ցնոսա. Իսկ արդ զինչ գործ է ձեր, և կամ բնաւ ո՞յր իսկ ածեալ է զձեզ այսր։ Առ այս ետ պատասխանի Աբրահամ և ասէ. Զայդ ձեզ ի վարդապետաց մերոց արժան էր ուսանել... ընդ նոսա եմք եկեալ, քանզի և պատուէր իսկ ունիմք յաստուածատուր օրինացն մերոց սիրել զնոսա իբրև զսուրբ ծնողս»

Կոցունց ականջսն՝ եւ տանել զԱսորեստան ի գաւառն որ անուանեալ կոչի Շաբուլ (Շահուղ՝ ըստ Եղիշէի), կալ անդ նոցա ի հարկի, և առնել մշակութիւն արքունի։... Եւ լուեալ զայս հաւատացելոց աշխարհին՝... ընդ առաջ ելին նոցա խնդութեամբ... Նա և զկարասի իւրաքանչիւր ուրուք բերեալ դնէին առ ոտս երանելեացն։... Երանելի երիցանցն ընկալեալ յընծայիցն հաւատացելոց... տային տանել կապելոց նախարարացն Հայոց։... Եր զի երանելի երէցն Աբրահամ առեալ զտուրս հարաւային կողմանցն Ասորեստանեացն տարեալ մատակարարէր կապելոց նահատակացն։... Կեցեալ ամս երանելոյ երիցոյն Խորենայ՝ անդէն յԱսորեստանի վախճանէր։ Իսկ երանելի երէցն Աբրահամ երաշխաւորութեամբ հաւատացելոց աշխարհին, որք զտունս իւրեանց և զարարս փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս, արձակեալ ի Հայս... և ձեռնադրեալ յաստիճան եպիսկոպոսութեան աշխարհին Բզնունեաց՝... վախճանէր ի նմին կարգի ի բարւոք ծերութեան»։

**20**. Ցայսմ եւս կը տարբերի ի Փարպեցւոյն Եղիշէ։ Ինչպէս տեսանք առ Փարպեցւոյն՝ Աբրահամ և Խորէն երթալով անձամբ առ Դենշապուհ ի Վրկանս, ուր կը գտնուէր նա յետ դարձի Թագաւորին ի պատերազմէն Քուշանաց՝ խնդրեցին նահատակել զնոսա ևս, և Դենշապուհ հրամանաւ Թագաւորին կտրելով զականջս նոցա՝ ղրկեց ի գործ արքունի մշակութեան յԱսորեստան, ուր մնացին նոքա շատ տարիներ, մինչև մեռաւ Խորէն. իսկ Աբրահամ երկրին քրիստոնեաներուն փրկանօք արձակուեցաւ ի Հայս, և եղաւ եպիսկոպոս Բզնունեաց։ Առ Եղիշէի չիք յիշատակութիւն Դենշապհոյ. դահճապետ ոմն գալով ի Նիւշապուհ յետ նահատակութեան Ղևոնդեանց՝ կը տանջէ շատ քրիստոնեաներ, կը կտրէ ոմանց քիթը, ոմանց ականջներն, և կը ղրկէ յԱսորեստան ի մշակութիւն արքունի։ Գալով առ Խորէն և Աբրահամ՝ կը հարցունէ, թէ ո՛վ են, և իմանալով թէ էին յաշակերտաց Ղևոնդեանց՝ կը դատէ զնոսա յանցաւոր իբրև ապստամբներու աշակերտներ, և լսելով ի նոցանէ խիստ պատասխաններ, զորօրինակ «շուն անպիտան», «ընդ վայր հաջող», «որդի սատանայի», այլովքն հանդերձ՝ կը բարկանայ, և տալով քարշել զնոսա և ապա գան հարկանելով սաստիկ՝ կը թողու կիսամեռ. ի վախճանի կտրելով զականջս նոցա՝ կը ղրկէ զնոսա յԱսորեստան ի գործ բռնի մշակութեան, յօրինակ այնոցիկ որ կը հակառակին կամաց Թագաւորին։ Բայց զարմանալին այն է, որ Եղիշէ յետ պատմելոյ զայս՝ կը յաւելու, թէ դահճապետն պատուիրեց զինուորներուն՝ Ասորեստան հասնելով թողուլ զնոսա երթալ յո՛ և կամին։ Այս եւս զարմանալի է, որ ըստ Եղիշէի Աբրա-

համ և Խորէն ունենալով այս ազատութիւնը՝ փոխանակ երթալու ի Հայս՝ կը մնան յԱսորեստան շատ տարիներ, մինչև Խորէն կը մեռնի օգոյն սաստիկ ջերմութենէն. իսկ Աբրահամ ի թախանձելոյ կապեալ նախարարաց կը դառնայ ի Հայս ի մխիթարութիւն ընտանեաց և ազգականաց նոցա: Եթէ Աբրահամ և Խորէն ընտրեցին մնալ յԱսորեստան, երկրին քրիստոնէից կողմէն ընծաներ զրկելու կամ անձամբ տանելու համար կապեալ նախարարաց՝ նոյն բանը կրնային ընել նաև երթալով ի Հայս. և նախարարք եթէ թոյլտուութիւն ունէին դուրսէն նպաստ ընդունելու՝ կրնային ընդունել նաև իրենց երկրէն: Դարձեալ՝ կապեալ նախարարք ինչպէս կրնային բռնի աշխատութեան դատապարտեալ գերի մը ստիպել երթալ իւր երկիրն առանց հրամանի տէրութեան: Փարպեցւոյն պատմութիւնն աւելի բանաւոր է: Ըստ Փարպեցւոյն՝ Խորէն և Աբրահամ ստիպեալ էին իբրև գերի մնալ յԱսորեստան. երկրին հաւատացեալներէն ոմանք կամաւոր ընծաներ միայն կը զրկէին, էր զի Աբրահամ անձամբ կը տանէր. այսչափ արտօնութիւն կրնար ունենալ Աբրահամ. իսկ Աբրահամու դարձն ի Հայս՝ ըստ Փարպեցւոյն եղաւ հրամանաւ տէրութեան, այսինքն քրիստոնեայք երկրին փրկանք տալով ազատեցին զնա: Նաև Աբրահամու եպիսկոպոսութենէն Բզնունեաց չունիք տեղեկութիւն Եղիշէ. ըստ պատմութեան սորա՝ Աբրահամ յետ դարձին ի Հայս ոչ միայն չվարեց հրապարակական պաշտօն, որպիսի էր այնպիսի մեծ նահանգի մը եպիսկոպոսութիւնն, այլ մանաւանդ երեք ընկերներով առանձնանալով անապատ տեղ՝ մեռաւ ճգնութեամբ: Ահա բուն իսկ Եղիշէի բանք, զորս համառօտելով կը դնենք. «Իսկ աշակերտք երանելեացն ի կապանս կային ի քաղաքին: Եկն դահճապետ մի արքունի և եհան ի նմին քաղաքէ ասորեստանեայս քրիստոնեայս արս հինգ... չարչարեաց զնոսա դանիւ... կտրեաց զնոցա ունչս և զականջս և ետ տանել յԱսորեստան, զի կայցեն ի մշակութեան արքունի:... Եկն դարձեալ նոյն դահճապետն առ աշակերտս սուրբ սպանելոցն, ընտրեաց երկուս ի նոցանէ մեկուսի յայլոցն և ասէ ցնոսա. Զինչ անուանք են ձեր: Եա պատասխանի մինն և ասէ. Առ ի ծնողաց՝ ինձ Խորէն, և դմա Աբրահամ. իսկ ըստ շնորհատուր կարգիս՝ ծառայք Քրիստոսի եմք և աշակերտք երանելեացն զորս սպանէք: Եա պատասխանի դահճապետն և ասէ ցնոսա. Իսկ արդ զինչ գործ է ձեր, և կամ բնաւ ո՞յր իսկ ածեալ է զձեզ այսր: Առ այս ետ պատասխանի Աբրահամ և ասէ. Զայդ ձեզ ի վարդապետաց մերոց արժան էր ուսանել... ընդ նոսա եմք եկեալ, քանզի և պատուէր իսկ ունիմք յաստուածատուր օրինացն մերոց սիրել զնոսա իբրև զսուրբ ծնողս

և սպաս տանել Նոցա իբրև հոգևոր տերանց։ Ցասեաւ դահճապետն և ասէ... Մինչդեռ ի խաղաղութեան և յաշխարհի էիք՝ բարւոք էր. յորժամ մահապարտ գտան Նոքա ըստ գործոց իւրեանց՝ ձեզ չէր արժանի ամենևին մօտ երթալ առ Նոսա... Առ այս եւ պատասխանի Խորէն և ասէ... Մեր վարդապետքն եթէ առ Աստուած յանցուցեալ էին, և կամ առ թագաւորն մեղուցեալ ինչ էին՝ ոչ յաշխարհի մօտ երթայաք առ Նոսա, և ոչ ի տար աշխարհ այլ զհետ Նոցա գնայաք։ Արդ քանզի առ երկոսեն կողմանսն արդարութեամբ կեցեալ են, և դուք զուր տարապարտուց սպանէք զնոսա՝ մեք արդ ևս առաւել սպասաւորեմք սուրբ ոսկերաց Նոցա։ Ասէ ցնոսա դահճապետն. Ես յառաջագոյն իսկ ասացի, եթէ կարի սատամբակ ոմն ես դու. ահա յայտ եղև աւադիկ, եթէ յամենայն մնաս Նոցա խառն էք դուք։ Աբրահամ ասէ. Ցո՞ր մնաս։ Դահճապետն ասէ. Առաջին՝ ի մահ մոգուցն, ապա և յայլսն ամենայն։ Աբրահամ ասէ. Այդ ոչ միայն ի մէնջ է, այլ ըստ կարգի և ձերոց օրինացդ. Թագաւորք ձեզ տան հրաման, և դուք ի ձեռն ձերոց սպասաւորացդ գործէք։ Դահճապետն ասէ. Ի Միհր աստուած երդուեալ է իմ, խստագոյն ևս խօսիս քան զվարդապետսն քո. յայտ է եթէ մնասակարագոյնք ևս էք դուք։ Արդ ոչ է հնար ձեզ ապրել ի մահուանէ՝ բայց եթէ երկիր պագանիցէք արեգական, և կատարիցէք զկամս օրինաց մերոց։ Խորէն ասէ. Ցայժմ իբրև զմարդ չարախօսէիր, և արդ իբրև զշուն անպիտան ընդ վայր հաչես։ Եթէ զոյր արեգական ականջք՝ դու տայիր Նմա թշնամանս դնել. արդ Նա բնութեամբ անզգայ է, և դու չարութեամբ անզգայագոյն քան զնա։ Միթէ բանիւք զփորձ առնուլ կամիս զմեր. այլ հանդէստրա քում չարութեանդ և մերում բարութեանս, և ամաչեցեալ դըտանի հայրն քո սատանայ, ոչ միայն ի մէնջ որ կատարելագոյնք ե-եմք, այլ և որ կարի փոքրիկն թուի քեզ՝ Նա գիցէ վէրս սատակայօգիս և ի մարմինս քո։ Զայս իբրև լուաւ դահճապետն՝ սրտմտեալ բարկացաւ ի վերայ Նոցա։ Ետ քարշել խստագոյն քան զառաջինն. և այնչափ սաստիկ քարշեցին՝ մինչև բազմաց կարծիք եղեն թէ մեռան։ Իսկ իբրև ժամք երեք ի վերայ անցին՝ դարձեալ խօսել սկսան երկոքեանն և ասեն. Փոքր համարիմք զանարգանս զայս և առ ոչինչ զցաւս մարմնոյս առ մեծ սէրն Աստուծոյ, որով կատարեցան հարքն մեր հոգևորք։ Հա՛պա, մի դլար և մի դադարեր. այլ զոր ինչ առ Նոսայն արարեր՝ զնոյն և առ մեզ կատարեա. եթէ չարագոյն թուին քեզ գործքն Նոցա՝ կրկին և զմերս համարեսջիր. զի Նոքա բանիւք հրամայէին, և մեք գործովք զարգիւնսն կատարէաք։ Ցայնժամ ևս առաւել զայրագնեցաւ ի վերայ Նոցա.

և հրամայեցոյց զմահու գան հարկանել։ Եւ առ մի մի ի նոցանէ փոխեցաւ վեց վեց այր ի դահճացն։ Եւ մինչդեռ կիսամեռք յերկիր անկեալ դնէին՝ հրամայեցոյց զերկոցունց ականջս մօտ կտրել։ Եւ այնպէս բերեցին՝ որպէս թէ չիցէ լեալ ի տեղւոջն։ Զարթեան որպէս ի քնոյ ի սաստիկ հարուածոցն, սկսան աղաչելով պաղատանս մատուցանել և ասեն. Աղաչեմք զքեզ, քաջ զինուոր Թագաւորին, կամ կատարեա զմեզ իբրև զհարսն մեր մահուամբ, և կամ արա զպատուհասդ ըստ օրինակի վերջնոցս։ Զի ահա լսելիք մեր առողջացան զանախտաւորութիւն երկնաւոր, իսկ հոտոտելիքս դեռ ևս աստէն ի տեղւոջ կան. մի կիսապարգև տանիր զմեզ յերկնից բարութենէն։ Սրբեցեր զմարմինս մեր քարշելով և զլսելիս մեր կըտրելով, սրբեա և զռնգունս մեր հատանելով։... Ես պատասխանի հեզութեամբ դահճապետն և ասէ. Եթէ և այլ յամեմ ես առ ձեզ մօտ կալով՝ կարծեմ եթէ և աշակերտէք զիս ի ձեր յամառութիւնդ։ Զի ահա արդ և զխորհուրդս արքունի ի վեր հանեմ ձեզ։ Ցայդ վայր եղև հրաման պատուհասիդ ձերոյ, և ի վերայ դորին պատուհասի երթալ ձեզ յԱսորեստան, և լինել ձեզ մշակ յարքունիս, զի որ ընդ ձեզ հայեսցի՝ մի ի դմին յամառութեան պնդեսցի ընդդէմ հրամանաց Թագաւորին։ Ասեն ցնա երանելիքն. Դու զմեր երկիրս կիսագործ թողեր, մեք յարքունի երկիրն կէս մարմնովք մերովք ոչ վաստակեմք։ Իբրև զայս լուաւ դահճապետն՝ աղաչեաց զզինուորսն որ տանէին զնոսա, և ասէ. Միայն աստի դուք առէք գնացէք, և հասեալ յԱսորեստան՝ ուր կամ իւրեանց է՝ և շրջեսցին։... Իբրև տարան հասուցին զնոսա յերկիրն Բաբելացւոց ի գաւառ մի զոր Շահուղն անուանեն, թէպէտև էին յարքունի պատուհասի՝ սակայն և՛ յայտ և՛ գաղտ մեծապէս ընկալեալ եղեն ի բնակչաց աշխարհին։... Եւ անդէն թեւակոխէին տեսանել զսուրբ կապանսն Նախարարացն, լինել սպասաւոր մարմնաւոր պիտոյից նոցա։ Իմացուցին զայս մեծամեծաց աշխարհին որք էին ի նմին սուրբ ուխտի քրիստոնէութեանն... Եւ հաւանեցան ամենեքին կցորդ լինել սուրբ կապելոցն ի հեռաւոր օտարութեանն։ Եւ այսպէս ժողովէին ամ յամէ ոմն սակաւ և ոմն շատ, ոյր զինչ և ի ձեռս պատրաստութիւն լինէր, եթէ դրամոց և եթէ դահեկանաց, տային յերանելիսն տանել նոցա։ Եւ այսպէս յարքանեկութեան կային մինչև տասն ամն լցաւ սպասաւորութեանն։ Եւ վասն զի յոյժ խստագոյնս պահէին ի ջերմոջ աշխարհին, և անդադար էին ի ճանապարհորդութեանն ընդ նոյն Շահուղ, ընդ Մեշոմն և ընդ Քաշկար և ընդ ամենայն Խորասան և Խուժաստան՝ սաստիկ տապով հարեալ ի խորշակէ՝ մեռանէր սուրբն Խորէն։ Իսկ երանելին Աբրահամ կայր

ի նմին առաքինութեան անդադար, և զամենայն աւուրս հաւատացելոցն շրջէր ժողովէր և տանէր ի մեծ հեռաստանն, և ինքն մատակարարէր ըստ իւրաքանչիւր կարօտութեան։ Եւ այնպէս յերկարեցաւ մինչև յերկոտասաներորդ ամն պատժաւորացն, մինչև աղաչել զնա միաբան ամենեցուն, զի հաւանեսցի երթալ յաշխարհն Հայոց, զի ընդ մտանել նորա առ նոսա՝ ի նմա տեսցեն և զքաջ նահատակսն որք կատարեցան սրով, ի նմա տեսցեն և զսուրբ կապանս չարչարանացն։... Զայս խորհուրդ խորհելով աստուածաշնորհ նախարարացն՝ մեծաւ թախանձանօք ածէին զխոստովանողն ի հաւանութիւն։ Եւ վասն զի ոչ էր սովորութիւն երբէք բարւոյն ընդդէմ դառնալ՝ փութացաւ վաղվաղակի կատարել զհրամանն։... Եկն եմուտ յաշխարհն Հայոց։ Փութացան և ելին ընդ առաջ նորա վաղվաղակի արք և կանայք, մեծամեծք և փոքունք, և ամենայն բազմութիւն ազատաց և շինականաց... Բայց երանելի խոստովանողն, թէպէտև այսպէս սիրով ընկալեալ եղև յամենայն աշխարհէն՝ ոչինչ կամեցաւ ամենևին մերձենալ առ օք ըստ մարմնոյ կարօտութեան. այլ ընտրեաց իւր տեղի մի զատ յամենայն բազմամբոխ ժողովրդոց, և առաքինի եղբարբք երիւք կատարեաց զկեանս իւր մեծաւ ճգնութեամբք (Եղ. էջ. 325—340)։



## ԳԼՈՒԽ Գ.

## ԵՐԿՐՈՐԴ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ. ՔԱՋՈՒԹԻՒՆՔ ՎԱՀԱՆԱՅ։

*1. Երրորդ դրուագ պատմութեան Փարպեցւոյն: 2. Արձակումն Նախարարաց. Երզատվշնասպ: 3. Նախարարք Կ'երթան ի պատերազմ: 4. Տարբերութիւն Եղիշէի ի Փարպեցւոյն: 5. Ազատութիւն որդւոց Հմայեկայ: 6. Դարձ Նախարարաց: 7. Կաթողիկոսունք զկնի Յովսեփայ. Գիւտ: 8. Բարոյական հանգամանք ժամանակին: 9. Վահան, երէց որդի Հմայեկայ: 10. Ոգի ազատութեան: 11. Գիւտ կը կոչուի ի դուռն: 12. Խորհուրդ ապստամբութեան. Առաքինութիւնք Վահանայ: 13. Գադիշոյ Խոռխոռունի: 14. Անքաստանութիւն զՎահանայ. Երթ նորա ի դուռն եւ դարձ: 15. Վահան կը վարանի անսալ ապստամբութեան խորհրդոյն, ապա կը հաւանի: 16. Մատնութիւնք: 17. Սահակ Բագրատունի՝ մարզպան, Վահան՝ սպարապետ ի կողմանէ Հայոց. Առաջին ճակատ յԱկոռի: 18. Սուտ համբաւ: 19. Հրաւէր առ Վիրս եւ առ հայ նախարարս վասն օգնութեան: 20. Երկրորդ ճակատ ի Ներսեհապատ: 21. Ազատութիւն Վարդայ, եղբօր Վահանայ: 22. Վահան Կ'երթայ զօրօք յօգնութիւն Վրաց. Պատերազմ ի Վիրս. Պարտութիւն Հայոց. Սահակ Բագրատունի մարզպան եւ Վասակ եղբայր Վահանայ կ'սպանուին: 23. Վահան գայ ի կողմանս Տայոց. Բանագնացութիւն ընդ Միհրանայ զօրագլխին Պարսից: 24. Միհրան կը կոչուի ի դուռն. Հրահատ եւ Յազդ: 25. Վահան կու գայ ի Վաղարշապատ: 26. Սուտ համբաւ զՍահակայ մարզպանէն եւ զՎասակայ: 27. Զարմիհր Հազարաւուխտ զկնի Միհրանայ: 28. Վահան Կ'երթայ ի կողմանս Տայոց յերեսաց Հազարաւուխտայ. Կանայք Կամսարականաց կը բռնուին: 29. Շապուհ Միհրան փոխանակ Հազարաւուխտայ: 30. Հնարք Վահանայ. Փոքր ճակատ եւ յաղթութիւն առանց Վահանայ: 31. Շապուհ հետամուտ Վահանայ. Յաղթութիւն Վահանայ քառասուն արամբ. Գդիհոն կ'սպանուի: 32. Դեսպան ի Պարսից առ Շապուհ. Պարտութիւն Պերոզի ի Հեփթաղս եւ մահ: 33. Շապուհ եւ Հազարաւուխտ կը մեկնին ի Պարս: 34. Վաղարշ կը թագաւորէ: 35. Նիխոր կը ղրկուի ի*

*Հայս: 36. Վահան կ'երթայ առ Նիխոր: 37. Բանք Վահանայ ընդ Նիխորայ: 38. Վահան եւ Նիխոր կը մեկնին ի միմեանց. Սքանչելիք ըստ Փարպեցւոյն. Այրուձին Հայոց կը ղրկուի ի դուռն: 39. Վահան կ'երթայ առ Վաղարշ: 40. Կարգի նահապետ Մամիկոնեան ցեղին եւ սպարապետ Հայոց, եւ դառնայ ի Հայս: 41. Անդեկան ումն զայ մարզպան, որոյ միջնորդութեամբ կ'առնու Վահան մարզպանութիւնը: 42. Յովհան Մանդակունի եւ ճառ նորա ըստ Փարպեցւոյն: 43. Դիտողութիւն Փարպեցւոյն Պատմութեան վրայ:*

**1.** Երրորդ գրուած պատմութեան Փարպեցւոյն, որ է մի միայն ժամանակակից պատմիչ՝ կու տայ մեզ քսանեւչորեքամեայ պատմութիւն մի, այն է նախարարաց արձակմանէն մինչեւ ցամն մարզպանութեան Վահանայ, կամ յամէ թագաւորութեանն Պերոզի (460) մինչեւ ցերկրորդ ամ թագաւորութեանն Վաղարշու (484)։

**2.** Ըստ նահատակութեանն Ղեւոնդեանց (454), այն է վեշտասաներորդ ամ թագաւորութեանն Յազկերտի Բ. (439 – 458), նախարարք էին տակաւին ի կապանս ի Նիւշապուհ, բայց կ'ընդունէին նպաստ Ասորեստանի հաւատացեալներէն, ինչպէս տեսանք, ըստ Եղիշէի՝ նաեւ յազգականաց իւրեանց, մանաւանդ ի կանանց, որ իւրեանց ոսկէն հանելով մասն՝ կը ղրկէին կապելոց.—«Իսկ կանայք կապելոցն . եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն... մտաամբ իւրեանց վաստակեցին և կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ ամ յամէ թողակ առնէին և տային տանել նոցա՝ ի մխիթարութիւն» (Եղիշ. էջ 360)։ Ի բանից աստի Եղիշէի կը տեսնուի, թէ վաղուց կարգեալ էր ռոճիկ կանանց նախարարաց յարքունուստ, մինչ նախարարաց յետոյ ուրեմն եղան այս շնորհք, այն է յետ մահուն Յազկերտի, յառաջին ամս թագաւորութեան յաջորդի նորա Պերոզի (460), թէպէտ ըստ Փարպեցւոյն ևս կանանց համար ռոճիկ կարգեցաւ՝ բայց ոչ այնպէս կանուխ, և այս է արդարև հաւանականագոյն։ Փարպեցին կը դնէ զայս յետ արձակման նախարարաց ի կապանաց։ Ըստ պատմութեան սորա՝ յետ մահուն Յազկերտի (458), և իբր երկամեայ քաղաքական պատերազմին, որ դրաւ յաթոռ թագաւորութեան զկրտսեր որդին Յազկերտի զՊերոզ մահուամբ երիցուն Որմզդանայ (460)՝ եղաւ հրաման արձակման նախարարաց ձեռամբ Յըզատվշնասպայ սիրելւոյն Պերոզի, ըստ Եղիշէի՝ միջնորդութեամբ հազարապետին Միհրներսեհի, թէպէտ այս հակառակ կու գայ պատմութեան նորին իսկ Եղիշէի, որ զՄիհրներսեհ արդէն իսկ առ Յազկերտիւ վնասակար (յանցաւոր) գտնուած և հազարապետութենէն հանուած կը դնէ

(Եղիշ. 347)։ Ուստի յայսմ նա ընտրելի է պատմութիւն Փարպեցւոյն, որ կը պատմէ մանր, թէ ինչպէս տարուեցան նախարարք ի Հրև, որ կը թուի լինել Հռագաւն Գրոց, կարգեցաւ ռոճիկ նոցա և կանոնք նոցա, այլովքն հանդերձ. «Եւ կեցեալ Յազկերտի թագաւորին Պարսից զչափ ժամանակի կենաց իւրոց՝ վախճանէր։ Եւ թագաւորեցին նորա երկու որդիքն, հակառակելով ընդ միմեանս, և դիմեալք ի վերայ միմեանց պատերազմաւ՝ յաղթահարեալ սպան կրտսերն զաւագն և ինքն թագաւորեաց, որում անուն էր Պերոզ։ Եւ ի նմին ամի թագաւորութեանն իւրոյ առաքեաց զՅըզատվշնասպ զիւր դայեկորդին զոր կարի յոյժ սիրէր, և հրաման ետ արձակել զնախարարսն Հայոց ի կապանաց, և կարգել նոցա ռոճիկ ի Հրև. Կալցեն, ասէ, անդէն այրուձիով, և կատարեսցեն զգործ որ ինչ և դիպէ նոցա Աշտատ հայրն Յըզատվշնասպայ։ (Այս անուանք — Աշտատ, Յըզատվշնասպ, ինչպէս նաև Հրև՝ անծանօթ են Եղիշէի)։ Եւ եկեալ Յըզատվշնասպն ետ նոցա աւետիս ասելով, եթէ Արքայից արքայ զմահապարտութիւնն եթող ձեզ, և ի կապանացդ արձակել. և կարգեաց ձեզ ռոճիկ ի Հրև, և կանանց ձերոց յաշխարհին իւրեանց։ Եւ ձեզ հրաման ետ կալ ի գործ արքունի, և լսել ամենայն բանի և կատարել՝ զոր հայր իմ Աշտատ հրամայէ ձեզ» (Փարպ. Կ)։

**3.** Ըստ Փարպեցւոյն՝ նախարարք գացին ի պատերազմ (ընդդէմ որոյ՝ չէ յայտ) ընդ հրամանատարութեամբ Աշտատայ, Յըզատվշնասպայ հօր, որ մեծապէս կը յարգէր զնոսա։ Սիրելի էին նոքա բոլոր բնակչաց երկրին, առանձինն իշխանին Հրևայ Շնոմշապհոյ։ Իսկ Յըզատվշնասպ կապեալ էր սիրով ընդ Արշաւրի Կամսարականի, ինչպէս Յովնաթան ընդ Դաւթի. — «Ի տեսանել զնախարարսն Հայոց Յըզատվշնասպայ և առ սակաւ սակաւ ընդելնուլ ընդ նոսա՝ շնորհեցաւ որպէս յաստուածային ակնարկութենէն խնամարկել. սիրեաց զԿամսարականն Արշաւիր ըստ սիրոյն Յովնաթանայ զԴաւիթ. յաղագս և այլոց նախարարացն Հայոց հոգայր բարեխօսութեամբ հանապազ։ Տարեալ այնուհետև զնախարարսն Հայոց ի Հրև և կարգեալ իւրաքանչիւր ումեք ռոճիկ՝ գումարէին զնոսա ի ձեռն Աշտատայ ունել զնոսա ի գործ պատերազմի. զորս մեծարեալ յարգեաց առաջի զօրագլխի գնդին, յաջողելով նոցա քաջութիւն երևելապէս, այլև առաջի ամենայն քաղաքացեացն Հրևայ և գաւառին։... Եւ իշխանն Հրևայ Հրևշնոմշապուհ սիրէր զկապեալսն Հայոց յոյժ յոյժ, և զքաջութիւն նոցա և զլաւ բարս և զմարթչութիւնն բազում անգամ գրով ծանուցանէր մեծամեծացն ի դուռն, և իւրոց սիրելեացն որ ի հրապարակին էին» (Փարպ. Կ)։ Եղիշէ կը

դնէ զայս ամենայն, այն է զարձակումն նախարարաց, այլովքն հանդերձ՝ եղած առ Յազկերտիւ։

4. Ըստ Եղիշէի՝ Յազկերտ իւր հազարապետին Միհրներսեհի բերանով կը հրաւիրէ դարձնել զնախարարս յուրացութիւն. և մինչ նոքա կը մերժեն՝ հազարապետը գովելով նոցա մասց հաստատութիւնը՝ լինի միջնորդ արձակման նոցա առ Յազկերտի. նաև Հաբև-Տղոմշապուհ գթալով ի նոսա՝ կը հաւանեցունէ զԹագաւորն արձակել զնոսա ի կապանաց, կարգել ռոճիկ, այլովքն հանդերձ.— «Մինչդեռ էին նոքա յայնպիսի նեղութեան՝ կարծիք եղեն ի միտս Թագաւորին, թէ առ յոյժ վշտին ձանձրացեալ են դառնութեան կենօքն իւրեանց։ Յղեաց առ նոսա զմեծ հազարապետն և ասէ. Յայսմհետէ զգաստացայք յանձինս ձեր, և մի՛ կայք ի նոյն յամառութեան. երկիր պագէք արեգական, և արձակիք ի չարաչար կապանացդ, և ունիք անդրէն զիւրաքանչիւր հայրենի կեանս ձեր։ Ետուն պատասխանի երանելիքն և ասեն. Առ փո՛րձ ինչ եկեալ հարցանես ցմեզ, եթէ արդարև Թագաւորն իսկ յղեաց զքեզ։ Երդուաւ հազարապետն և ասէ. Զի՞ք այդր բան աւելի կամ պակաս՝ որ ոչ ի բերանոյ նորա ելեալ է։ Ասեն ցնա անդրէն. Որք միանգամ աշակերտեալ են ճշմարտութեան՝ ոչ երբէք փոխին ի նմանէ, այլ որ ենն՝ նոյն կան... Բայց արդ աղաչեմք զքեզ և քև զԹագաւորն ձեզ, մի՛ այլ վասն այդպիսի իրաց հարցանէք ցմեզ, այլ զինչ եդեալ է ի մտի ձերում վասն մեր՝ կատարեցէք։ Իբրև լուաւ զայս մեծ հազարապետն՝ յոյժ գովեաց ի միտս իւր զպնդութիւն հաստատութեան նոցա, և յայնմ հետէ սկսաւ արկանել սէր ընդ նոսա՝ իբրև ընդ սիրելիս Աստուծոյ։ Եւ բազում բանիւք ողոքանօք ածէր զԹագաւորն ի հաւանութիւն, զի թողութիւն արասցէ նոցա ի կապանացն իւրեանց։ Զի թէպէտև փոխեցաւ նա ի գործոյ հազարապետութեանն արքունի, և ի բազում իրս գտաւ վնասակար, ինքն իսկ յանձն իւր կրթէր զաւեր աշխարհին Հայոց, վասն որոյ և մեծաւ անարգանօք յուղարկեցաւ ի տունն իւր՝ սակայն զկապելոցն ոչ երբէք չարախօս կամէր լինել մինչև ցօր վախճանի կենաց իւրոց» (Եղիշ. էջ 345—347)։ Այս է պատմութիւն Եղիշէի. բայց պատմութիւն Փարպեցւոյն, որպէս ասացաք՝ է հաւանականագոյն, և միաբան ժամանակագրութեան նորին իսկ Եղիշէի, ինչպէս կը դիտէ Գաթըրճեան.—«Եղիշէ զայս ամենայն դնէ առ Յազկերտիւ լեալ, սակայն ժամանակագրութիւն նորա որ հակառակ է ըստ պատմութեան իւրում՝ է միաբան պատմութեանն և ժամանակագրութեան Փարպեցւոյն, քանզի ինքն Եղիշէ 9 ամս և ամիսս 6 ասէ լինել նախարարաց ի կապանս, որ է 452—460, ուր, ըստ

նորին իսկ Եղիշէի՝ մեռաւ Յազկերտ յամի 458» (Գաթըրճ. Տիեզ. պատմ. Հտ. Բ. էջ 549, Ծան. 2)։

Ե. Ըստ Փարպեցւոյն՝ յառաջ քան զարձակումն նախարարաց, արդէն իսկ առ Յազկերտիւ (455) եղաւ, միջնորդութեամբ Աշուշայի բդեշխին Վրաց, ազատութիւն որդւոց Հմայեկայ, եղբօր Վարդանայ. –«Իսկ յամին եօթնևտասներորդի (455) Յազկերտի արքայի, իշխանն Վրաց Աշուշայ աղաչէր զաւագս դրանն արքունի, բազում և անհամար կարասի ծախեալ իւրաքանչիւր ումեք, և մանաւանդ հազարապետին Միհրներսեհի, զոր մեծաւ ջանիւ և սաստիկ աշխատութեամբ հաւանեցուցեալ տալր ասել ցթագաւորն Յազկերտ, զի շնորհեսցէն նմա զորդիս երանելոյ նահատակին Հմայեկայ ի տոհմէն Մամիկոնէից... որք էին յոյժ տղայք... և հաւանեցուցեալ զմիտս թագաւորին՝ պարգևեաց Աշուշայի որպէս կարի առն սիրելւոյ և վստահաւորի՝ զանհաւատալի ամենեցուն զմեծ նորա խնդիրն։ Եւ Աշուշայի տեսեալ զայն և ընկալեալ ի թագաւորէն զմեծ պարգևն՝ յարուցեալ ի խորանին առաջի ամենեցուն անկեալ յերկիր հոլովէր այսր և անդր, և ապա հարկանէր զգլուխ ի գետինն. այսպէս կատարէր զերկրպագութիւնն։ Եւ տեսեալ զայս թագաւորին և ամենեցուն որ ի խորանին էին, և զարմացեալք մեծապէս, թէ զինչ արար այրն՝ հարցանէր ցնա թագաւորն, թէ Վրաց բդեշխ, զինչ է այդ նոր իմն գործ զոր ցուցեր դու մեզ այսօր։ Եւ պատասխանի տուեալ Աշուշայի ասաց, թէ Բարերար արքայ, դուք ինձ նոր պարգև շնորհեցէք, զոր այլ ումն ընկերաց ծառայից ի մէնջ չէր գտեալ. և ինձ արժան է նոր երկրպագութեամբ երկիր պագանել ձեզ՝ զոր ձեր յայլ ծառայէ զայնպիսի երկրպագութիւն երբէք չէր տեսեալ։ Եւ լուեալ զայնպիսի բանս թագաւորին յԱշուշայէ և ամենայն բազմութեան աւագանւոյն՝ յոյժ գովեցին զայրն և մեծապէս զարմացան» (Փարպ. ԾԹ.)։

Զ. Փարպեցին յետ դնելոյ համառօտ գովեստ զկենաց և զվարուց կապեալ նախարարաց և կանանց նոցա՝ կը յիշէ զդարձ նոցա ի Հայս յամին վեցերորդի Պերոզի.—«Ոմանք ի կապելոց նախարարացն որոց ականատես իսկ եղաք, արդարև յերկրի երկնաւորք էին և ի մարմնի հրեշտակք երևէին. որոց կարգեալ անձամբ անձանց դպրոց, և ուսեալք զկտակարանս եկեղեցւոյ, հոգևոր կրօնիւք զանապատական առաքինեաց զվարս տպաւորեալ յանձինս իւրեանց... յամենայն կուսոյ օգնականութեամբ հզօրին ողջանդամք, յաղթողք և առաքինիք դառնային։ Եւ որք յաղագս ծերութեան կամ ծանրամարմնութեան ըստ մարմնոյ բնութեան ուսանել ոչ զօրէին՝ յերկար աղօթիւք և անվաստակ յոտն կալով առաւել ևս կամաւոր յօժա-

բութեամբ անքուն և անհանգիստք լինէին. և էր տեսանել զամենեսեան որդիս լուսոյ և մանկունս արքայութեան։ Նոյնպէս և կանայք, որոց նահատակեալ մարտիրոսացան արքն, և որոց էին ի կապանս արքն ի Հրև՝ բազում պարկեշտատէր առաքինութեամբ մի զմիով եկեալս տունէին, զոր ամենայն մեռանելով ամենայն տեղեաց… և զընական տկարութիւն մարմնոյ կանանց զօրացուցեալ առաւել քան զարանց՝ քաջայաղթողք եղեն։ Կանայք փափուկք դստերք նախարարացն և կանայք աւագաց՝ փոխանակ նաշհոյ կորեակ ուտէին, և փոխանակ պարզ գինւոյ ջուր չափով ըմպէին. փոխանակ կերպասեայ ոսկեհուռ զգեստուցն՝ խոշոր բրդեայս զգենուին, և փոխանակ բազմադիմի անկողնոցն՝ ի վերայ երկրի գետնատարածք լինէին, և որք յառաջագոյն յամբանայէն ի քուն՝ նմանեալք վերնացն անքունք եղեն։ Զօծան իւղով, չյարմարեցին սանդրով զհեր գլխոյ իւրեանց, և որում անհնար է յաղթել կանանց՝ շատախօսութեանն և սոէպ ընդ քօղով այսր անդր հայեցողութեան զաչս ածելոյ ի սոէպ՝ և ցածուցին զլեզուս իւրեանց յաւելորդ խօսից։ Ցորոց ի խնդրուածս և ի վաստակս ի միտսին արանց և կանանց ամենազօրն Աստուած հայեցեալ… շնորհեալ պարգևեաց դառնալ կապելոցն յաշխարհ Հայոց։ Որք եկեալ ի տունս իւրաքանչիւր յամի վեցերորդի թագաւորութեանն Պերոզի (464), և կեցեալք իւրաքանչիւրոց ըստ սահմանելոյ ի Տեառնէ, վախճանեալք թաղեցան ի գերս հարց իւրեանց խաղաղութեամբ ըստ Աստուծոյ հաճոյիցն, օրհնեալք ամենեքեան ի բերանոյ սուրբ կաթողիկոսին Գիւտայ։ Եղիշէ ևս, (էջ 355—362) ունի նախարարաց կանանց վրայ ըստ իւրում ոճոյ երկայն և սեթևեթեալ գովեստ, զոր աւելորդ կը համարինք դնել հոս, բաւական համարելով ինչ որ Փարպեցին կ'աւանդէ արդարև կարճ, բայց ազդու։

7. Փարպեցին յետ յիշելոյ համառօտիւ զկաթողիկոսունս որ նստան զկնի Յովսեփայ, այն է զՄելիտէ (452—457), և զՄովսէս Ա. ի Մանազկերտէ (457—464)՝ կու գայ առ Գիւտ (465—475), զորմէ կը խօսի մեծ գովեստիւ։ Առ սովաւ որդիք Հմայեկայ, եղբօր Վարդանայ—Վահան, Վասակ, Արտաշէս և Վարդ, կը կրթուէին ընդ խնամով մօրն իւրեանց Ձըւկայ, քենւոյն Աշուշայի։ Ընկեր և սննդակից սոցա էին մանկունք Կամսարականաց և այլոց տոհմից, որ արդարև բարեպաշտագոյն էին և որոց վրայ կը հսկէր փութով և նախանձու արթունն Գիւտ։

8. Այս առթիւ կու տայ մեզ Փարպեցին համառօտ բայց ազդու նկարագիր բարոյական հանգամանաց ժամանակին, սրտառուչ բանիւք գանգատելով, թէ ինչպէս անարժան մարդիկ կեղծաւորու-

թեամբ առնլով տանուտէրութիւնն՝ անպիտանացուցին զազգն, մինչև Պերոզի հրապարակաւ նախատել զՀայս իբրև անպիտան և յետին քան զԱսորիս։—«Յետ կատարման սուրբ կաթողիկոսին Յովսեփայ յաջորդեաց զկաթողիկոսութիւնն յաշխարհիս Հայոց տէր Մելիտէ, որ էր յազգէն Մանազկերտեցեաց, և զհետ նորա տէր Մովսէս, որ էր և նա ի նոյն ազգէ։ Եւ ապա ըստ Աստուծոյ տեսչութեան յաջորդեաց զկաթողիկոսութիւն աշխարհիս Հայոց տէր Գիւտ, որ էր ի գաւառէն Տայոց և ի գեղջէն Արահեզայ, այր լի գիտութեամբ հայովս և առաւելեալ յունիւն, յորդասաց բանիւ և առատաբուխ վարդապետութեամբ... որոյ բանք իւր նման յորդառատ անձրևի զամենայն լսողի ծաղկեցուցեալ պտղաբերէր զոգիս։... Իսկ զորդիս նահապետակելոցն որ ի տոհմէ Մամիկոնէիցն էին՝ և կամ որք ի տոհմէ Կամսարականացն և կամ յայլ ազգաց (ցեղից), կանայք նահատակելոցն և արանցն կապելոց ի դրանն, թէպէտև ի նեղութեան էին՝ ուսուցեալ և խրատեալ, ոչ իբրև զանփոյթ և զանպիտան կանայս, այլ իբրև զքաջայրս զառաջիկայ զօգտաբեր հրահանգս մանկանցն հոգացեալ լնուին։ Եւ մանաւանդ կին նահապետին Հմայեկայ Մամիկոնէի, եղբօր սրբոյն Վարդանայ, որ եղև կին անուանի և առաւելեալ ամենայն լաւ և մտաւոր մասամբք յամենայն կանայս ի Հայաստան աշխարհիս, որ սնոյց և խրատեաց զորդիսն իւր յաշխարհին Վրաց ի տան Աշուշայի Վրաց բդեշխի, որ խնդրեաց զնոսա պարգևս յարքայէն Պարսից Յազկերտէ, և ածեալ ետ ցմայր իւրեանց որում անուն էր Ձուիկ. վասն զի զքոյրն Ձուիկայ ունէր ի կնութեան բդեշխն Վրաց Աշուշայ, որում անուն էր (կնոջն) Անուշվռամ։ Եւ սնուցեալ անդ մանկունքն և ուսեալ՝ յառաջադէմք էին յամենայնի և հռչակաւորք. որք մինչ դեռ ևս ի տիս մանկութեան էին՝ տեսանող մտաց երևէին աջողակք և զարմանալիք. որում անունն էր առաջնոյն Վահան, և երկրորդին Վասակ, և երրորդին Արտաշէս։ Բայց էր նոցա միւս ևս եղբայր կրսեր անուն Վարդ, որ էր մնացեալ տղայ ի դայեակս իւր ի Տայս։... Ի ժամանակին յայնմիկ ի Պարսկաց զտանուտէրութիւնն գնեալ էին ուրացութեամբ ըստ անարժանութեանն, և ոչ տիրացեալք աստուածպաշտութեամբ իբրև զարժանաւորս, արք անմիտք և վնասակարք, անպիտանք և ոչ պիտանիք, վատք և ոչ քաջք։... Եւ էր տեսանել այնուհետև յաշխարհիս Հայոց զլաւութիւն հեռացեալ, զիմաստութիւն կորուսեալ, զքաջութիւն հեռացեալ և մեռեալ, զքրիստոնէութիւն թագուցեալ։ Եւ որ երբեմն քաջանուն զօրքն Հայոց ի մէջ այլ զօրացն ամենայնի երևէին, և զօրագլուխք անուանիք և յաղթողք՝ ապա ծաղր էին ամենեցուն և կատականք. մինչև ինքն իսկ թագաւորն

Պերող յայտնայէ» նախատելով երբեմն առաջի ամենայն ատենին ասէր, թէ Այր անպիտան և գունդ յետին որ զամ մի յիմ իշխանութիւնն է՝ Ասորոց է, բայց քան զԱսորի՝ Հայն է այր յետին և անպիտան։ Եւ էր լուրն այն արժանի լալոյ և ողբալոյ» (Փարպ. ԿԳ.)։ Որչափ և կուսակցութեան ոգւով ներկեալ համարինք Փարպեցւոյն այս նկարագիրը՝ չէ անհաւանական, թէ խիստ որթոդոքս մասին այնչափ դիւցազնական ջանից և զոհերուն ունայնանալը չմնաց առանց յոռի ազդեցութեան ազգին ոչ փոքր մասին վրայ։ Անձին շահ և փառաց տենչ տուած էին տեղի գէթ առ երկաս ուրացութեան ոմանց ի նախարարաց, յանհնարին վիշտ այլոց, որ թէև խիստ էին ուղղամիտ յիրաւի, և որոց ոգին և կրթութիւնն էր տարբեր։ Այնպիսի հակառակ ոգւով զգածելոց մէջ անհնար էր չգտնել մաս ատելութեան և թշնամութեան։

Ձ. Փարպեցին, իբրև կուսակից վերջնոց, այն է ուղղամիտ մասին՝ առաջիններուն, այն է թուլացելոց ատելութեանը նշաւակ կը դնէ զորդիս Հմայեկայ, որք օրըստօրէ կը զարգանային յիմաստութեան և յարուեստի զինուորութեան, յարեցուցանելով յինքեանս նաև զազգակիցս իւրեանց զորդիս Կամսարականաց։ Մանաւանդ երէց որդին Հմայեկայ Վահան, որ արդէն սկսած էր համարուիլ գլուխ նորոգ կազմուելու կուսակցութեան, և որ կանուխ կամ անագան պիտի պարզէր երկրորդ ապստամբութեան մը դրօշն, իբրև արդարև ժառանգ ոգւոյն և քաջութեան հօրեղբօր իւրոյ Վարդանայ՝ կը կորզէր յինքն երկու կողմանէս հայհցուածն։ Վահան, հակառակ բամբասանաց և զրպարտութեանց ընդդիմակաց մասին՝ էր սիրելի Պարսկաց անգամ, մինչև գովել զնա առաջի թագաւորին, որ կը մեծարէր զնա յոյժ, թէպէտև կ'ակնածէր ի նմանէ, յիշելով այն ցեղին քաջութիւնը. «Այնպիսի անպիտան իշխանք ժամանակին տեսանէին օրըստօրէ զաճումն յառաջադիմութեան յորդիս ազգի նահատակելոց Մամիկոնէից, զոր ոչ ի տուչութենէ մարդոյ վստահեալ ունէին յանձինս, այլ օգնութեամբ վերին խնամակալութեան, ի բարեխօսութենէ սուրբ արեան նախնեացն իւրեանց, զոր ի վերայ սուրբ եկեղեցւոյս Հայոց հեղին յօժարութեամբ, կային աներկիւղապէս ի մէջ անուանեալ իշխանացն Հայոց որպէս ի մէջ թշնամեաց։ Թէպէտև արհամարհեալք էին առ նախանձու՝ սակայն լաւագոյնք էին և երևէին յամենայնի և ականաւորք ի խորհրդի, մտաւորք և իմաստնագիւտք, ի նետաձգութեանն գեղեցկաձիգք և դիպեցուցօղք, յորս՝ թեթևաշարժք և նախապանք, յերկոցունց ձեռաց յաջողակք, և յամենայն կողմանս ուղղակիք և շնորհալիցք. զորոց ձանձրացուցանէին բազմածառայքն զանձաալեցն զզուրան, խնդրելով հանա-

պազ զմիս այլևայլ որսոց և կամ այլ պատուական և մեծագին գիւտից խնդրովք ըստ իւրաքանչիւր աշխարհաց»։ Փարպեցւոյն միտքն է այս. որովհետև Վահան և իւրքն էին քաջ և յաջողակ յորսարդութեան, և միս երէոց և ամիճ կը գտնուէր մէջտ առ նոսա առատ, որ պատուականագոյն համարուած էր առ հինսն Հայոց, և որովհետև ուրիշ երկիրներէ ևս կ'ընդունէին նոքա չքնաղ և պատուական բաներ՝ միւս նախարարաց ծառայք որ բազում էին թուով՝ կը մոլեցունէին զդրունս սոցա, որ չունէին իբրև զնոսա բազմութիւն սպասաւորաց՝ խնդրել այն չքնաղագիւտ բաներէն։ «Նոքօք շքեղանային ընթրիք ամենայն տանուտերանց Հայոց, նոքօք զարդարէին յամենայն տունս օտարք և ընտանիք։ Նմանեցուցեալ ինքեանց ի յառաջանալ փութային և զօրգէս երանելոյ Կամսարականին Արշաւրայ տեառն Արշարունեաց, որք և աղգախառն իւրեանց էին ծնունդք դստեր մարտիրոսին Վարդանայ, խրատել և հրահանգել ըստ իւրեանց իմաստութեան և արուեստի ջանային։ Եւ յայսպիսի ինչ բարւոյ մասունս առաւել ևս կամաւոր յօժարութեամբ յորդագոյն էր սաստ որդին սրբոյն Հմայեկայ, Վահան, քանզի էր այր մտացի, առողջախորհուրդ և բարեսէր, յոր գործ և ձեռն արկանէր գործել՝ տէր յաջողէր ի ձեռս նորա և զօրանայր։ Նաև գործակալք պարսիկք որ գային ի գրանէ, թէպէտև ոչ կամաւ՝ այլ ըստ Աստուծոյ սագրելոյ սիրէին զնա և պատուէին։ Որք և առաջի թագաւորին Պարսից գովէին զյուսութիւն տանն և անմոռաց լիշէին. մինչև ինքն իսկ թագաւորն Պերոզ գլխովին ծանեաւ զնա և առ լսելս ունէր, և յանդիման ամենեցուն գովէր և արժանի պատուոյ հաշուէր։ Բայց արժանի ըստ նորա իմաստութեանն և քաջութեանն թէպէտև ածէր զմտաւ պատուել զնա, այլ յիշելով զհարցն և զնախնեացն նորա զիրս և զգործս, և որպէս հանապազ ընդդիմութեամբ և պատերազմաւ աշխատ կալեալ էր զնոսա՝ յապաղեալ կասէր, մանաւանդ իբրև հապստէպ լսէր զնախանձորդացն զբանսարկութիւն… կասկածէր երկիւղիւ» (Փարպ. ԿԳ.)։

**10.** Ընտիր և առաքինի մարդիկ իբրև զՎահան, որպիսի էին Բաբիկ Սիւնի և Առնակ Ամատունի և այլք ըստ Փարպեցւոյն՝ կ'ապրէին գրեթէ առանձնացեալ, ընդ հովանեաւ և խրատու սքանչելւոյն Գիւտայ։ Թէպէտև «կարևոր համարէին նոքա, որպէս ասէ Փարպեցին, համբերութեամբ ի քրիստոնէական կարգի վախճանել» էին սակայն ի ծածուկ ի խնդիր ազատութեան, փախստեամբ և կամ օգնականութեամբ Յունաց, ուր աղագաւ քանիցս անգամ եղան փորձեր գիմել առ Լևոն Ա. կայսր (457—474), բայց չյաջողեցան։ Սակայն Գիւտ ոխութեամբ էր, որպէս ասէ Փարպեցին, հակառակ կող-

ման հետ, որ ինչպէս կ'երևի՝ աշխարհային յուսով կ'ողոքէին զՊարսիկս. մանաւանդ Մաղխազն (Խռախոռունին) Գադիշոյ, որ և կամքատանէր չարաչար զԳիւտ, իբրև հակառակորդ պարսկական տէրութեան և դենին։

**11.** Գիւտ կը կոչուի ի դուռն, կ'երթայ, կ'ընդունուի ատեղւոյն քրիստոնեաներէն, կու տայ պատասխանի իրեն դէմ եղած ամբաստանութեանց Ցրդատվշնասպայ, որ կարգուած էր թագաւորէն կողմանէ. և թէպէտև կ'արդարացունէ զանձն՝ բայց որովհետև, ըստ Փարպեցւոյն, Պերոզ կը պահանջէր ի նմանէ ընդունել զմոգութիւնն, ապա թէ ոչ կ'սպառնար ընկենուլ զնա եպիսկոպոսութենէն՝ Գիւտ, առանց ուրանալոյ զիւր հպատակութիւնն հրամանաց թագաւորին իբրև պաշտօնեայ՝ իմացուց թէ զեպիսկոպոսութիւնն, իբրև աստուածուստ տրուած կարգ կամ ձեռնադրութիւն՝ առնուլ չէր ձեռնհաս ո՛չ նա և ոչ այլ ոք ի մարդկանէ։ Այս համարձակութիւն Գիւտայ զայրացուց զթագաւորն՝ մինչև ընկենուլ զնա կաթողիկոսութենէն, որ կը թուի թէ իբրև քաղաքական պաշտօն ևս կը համարուէր, այժմու պատրիարքութեան պէս։ Գիւտ ուրախ էր, վասն զի ազատեցաւ կաթողիկոսութեան ծանր հոգէն, և իւրով կամօք մնալով ժամանակ մի ևս ի դրան՝ դարձաւ ի Հայս, և մեռաւ իւր գաւառին մէջ Ոթմուս անուանեալ գիւղը։ Փարպեցին կու տայ նմա նաև բժշկութիւններ կատարել ի Պարսս.—«Իսկ լաւ ոք այր յանկարծ և կամ արժանաւոր թէպէտև էր ի ժամանակին, որպէս լաւ այր Բաբիկ Սիւնի և կամ սքանչելին Առնակն Ամատունի և կամ այլ ոք նման նոցին, ի հոգեսպանութենէ մոլեկան թագաւորին և ի կատաղութենէ ամբարշտեալ ժամանակի իշխանացն որպէս նապաստակք ի սլացմանէ գիշակեր արծուեաց ի ծերպս վիմաց և ի մացառուս անդիս մայրեաց զօղեալ թագչէին. կարևոր համարէին համբերութեամբ ի քրիստոնէական կարգէ վախճանել, քան թէ փառախնդիր յանձամբ պատահել ուրացութեան և կորնչել։ Լաւ համարէին ըստ բանի Գրոյն զնախատինս վասն Քրիստոսի, քան առ ժամանակ մի թաթաւել ընդ սնոտի փառս աշխարհիս... Ժողովեալք նստէին առ սուրբ քահանայապետին Հայոց Գիւտայ, որ ոչ երբէք լռէր յարտասուելոյ զմոխրասիրացն զմոլորութիւնս, որ խնդրէր լռելեայն պաճարանս հայթայթանաց հանգերձ նոքօք. երբեմն փախչել յօտարութիւն, և երբեմն ի խնդիր լինել օգնականութեան և ապստամբել։ Առաքէին գաղտ և պատգամաւորս միանգամ և երկիցս առ թագաւորն Յունաց Լևոն, որոյ թէպէտև յանձն առնուլ կամէր օգնել՝ յերկարէր ժամն և խափանէին։ Եկեալ էր այնուհետև սուրբ կաթողիկոսն Հայոց Գիւտ առ ի չժուժալ սրտին յայտնա-

պէս ոխութեամբ գրգռել ընդ անօրէն ուրացելոցն, և սիրել և պատուել զկողմն տառապեալ հաւատացելոցն։ Եւ մանաւանդ առ վատթարս ունէր և արհամարհէր զՄաղխազն Գադիշոյ, որ զօրագլուխն և քաջալերիչն էր ամենայն ամբարշտելոցն դասու։ Որոյ չկարացեալ տանել արհամարհանաց սրբոյ կաթողիկոսին՝ զօդեալ բիւր բանս թշնամութեան ամբաստան լինէր զնմանէ առ թագաւորին Պարսից Պերոզ ասելով, եթէ Զմարդիկ որ զկամաց քոց զհրաման կամին կատարել և զքո օրէնս խորհել յանձն առնուլ՝ կոչէ սա ինքն, և է որ ինչ տալով, և է զորս քաղցր բանիւք պատրէ և յիւրացն ի բաց դարձուցանէ։ Վասն զի բազումք եկեալ են առ իս և յանձն առեալ ունել զօրէնս քո, և նորա կոչեալ առ ինքն՝ սպառնանօք ի բաց տուեալ է թողուլ զիւրսն և արհամարհել, այլ և ըզմեզ որ զքեզ սիրեմք և արեգական և կրակի երկիր պագանեմք և կամաց քոց ծառայեմք՝ ատեայ և թշնամանէ։ Եւ ինքն ընդ կայսեր խօսի և պատուական ընծայիւք հպատակէ նմա և մեծամեծաց որ ի դրան նորա են։ Եւ այլ բազում բանիւք ըստ օրինի թըշնամւոյ խօսէր ըստ կամի։ Եւ լուեալ զայսպիսի բանս ամբաստանութեան թագաւորին Պերոզի ի Մաղխազէն Գադիշոյէ՝ զայրացեալ սրտմտութեամբ հրաման տայ սրբոյ կաթողիկոսին Հայոց ի դուռն հասանել, և անդ պատասխանի առնել բանից դատախազին։ Իսկ երանելի կաթողիկոսն Հայոց Գիւտ կամաւ և յօժարութեամբ ի դուռն երթայր և յանդիման լինէր ատենաց դրանն։... Հեթանոսք մեծ զգուշութեամբ խորշեալ պատկառէին ի նմանէ, և քրիստոնեայքն և եպիսկոպոսն Տիզբոնի և Խուժաստանի և Հրեայ և ամենայն կողմանցն այնոցիկ երեցունք և սարկաւագունք երկուցեալ դողային ի սրբոյն, որպէս ի մարգարէէ Տեառն Աստուծոյ։ Եւ լուեալ թագաւորին Պերոզի զերթալ սրբոյն Գիւտեայ՝ յղէր առ նա մի ըստ միոջէ ըստ ամենայն բանից ամբաստանութեան Մաղխազու զՑըրզատվշնասպն, զորդի Աշտատայ ի Միհրան տանէ։ Եւ սրբոյ կաթողիկոսին Գիւտայ պատասխանի արարեալ բանից թագաւորին՝ ասսէր. Ոչ են ամենայն ասացեալքդ Մախազու զինէն առ ձեզ՝ սուտ, այլ կան որ արդար են, և են որ ոչ են ստոյգ արդար։ Սիրել ըզքրիստոնէութիւն և որ ոք քրիստոնեայ է՝ զայդ ոչ այսօր ընտրեալ պահեմ յանձին իմում, այլ ի մանկութենէ իմմէ։... Այլ որ ասենդ թէ երթևեկք նորա ի Հոռոմս՝ ոչ ըստ դորա կարծեաց և խօսիցն այդպէս են իրքն. այլ վասն զի զդպրութիւն գիտութեանս մերոյ յաշխարհին Հոռոմոց ուսեալ եմ, և են իմ անդ ծանօթք բազում և ուսումնակիցք, այլ և զկերպարան հանդերձիցս զոր ունիմքս՝ անտի գնեմք, վասն զի և ոչ յայլ աշխարհի գտանի սա

ուրեք. այլ զհնազանդութիւն ծառայութեան օրէնք խոկ մեր պա-
տուիրեն հատուցանել տերանց զգէպզօղսն և զարժանաւորս։ Եւ տա-
րեալ զայս ամենայն բանս պատգամաւորին առ Թագաւորն՝ խեղոյն
ծանեաւ Թագաւորն, թէ ստոյգ են խօսք որբոյն, և սուտ և առ
քինաւորութեանն խօսք Մախաղ զնմանէն զոր ինչ և ասէ։... Բայց
յղէր առ երանելի կաթողիկոսն, թէ Մինչև ցայժմ քո իշխանու-
թիւնդ առանց իմ հրամանի կալեալ է, և ծառայ մարդիկ են որոց
քեզ զայդպիսի մեծ գործ տուեալ է, և ոչ ինչ յինէն ունիս։ Բայց
այժմ եթէ զիմ կամս առնես և զիմ օրէնս ունիս՝ զգործ զայդ քեզ
և քում ազգի և որում դու կամիս՝ տամ մինչև յաւիտեանս, և
զքեզ պատուով այնպէս արձակեմ ի Հայս՝ զի Հայոց ուրուք ի մեր
դրանս պատիւ և շքեղութիւն այնպիսի չեղէ տուեալ որպէս դու
գտանես։ Ապա թէ յամառեալ չհաւանիս կատարել զկամս իմ՝ զե-
պիսկոպոսութիւնդ ի բաց առնեմ ի քէն, և ի գործոցդ ի բաց հա-
նեմ, և դու անարգանօք և թեթևութեամբ երթաս ի տուն քո և
յաշխարհն։ Երանելի այրն Աստուծոյ լցեալ զօրութեամբ սուրբ Հո-
գւոյն՝ ասաց ցպատգամաբերն արքունի. Կամէի թէ այդպիսի բանից
պատասխանիս ես ինձէն առնէի առաջի Թագաւորին. քանզի ոչ է
հնար քեզ և ոչ իշխես համարձակապէս պատմել Թագաւորին լիով
զամենայն լսեալսն ի բերանոյ իմմէ։ Եւ պատգամաւորին պատաս-
խանի տուեալ ասէ ցսուրբն. Համարձակութիւն տուեալ է Թագա-
ւորաց՝ ասել զարդար լուրն ի մէջ երկուց կողմանց, և լսեն պատ-
գամաւորք, և չիշխեն եթէ չասեն։ Եւ սուրբ այրն Աստուծոյ ետ
պատասխանի և ասէ. Ասա ցԹագաւորն, թէ յաղագս գործոյս զոր
ասես, թէ ցայժմ քո ի ծառայից և ոչ յինէն կալեալ է՝ թէ դու
կամ ով ի ծառայիցն քոց որ ետուն և առնուք յինէն՝ ուրախ եմ
և կամիմ... Իսկ վասն եպիսկոպոսութեան ձեռնադրութեանս որ
ասես, թէ ի բաց առնում ի քէն՝ զայս երկնաւոր ձեռնադրութեան
պատիւ առնուլ յինէն ոչ Թագաւորք և ոչ յիշխանաց ոք ոչ իշխէ,
քանզի և կարէ իսկ ոչ, այլ մահ. և ոչ ընաւ երկնչիմ ի մահկա-
նացու մարդոյ տալ զպատիւս զայս ինձ և կամ առնուլ յինէն։
Բայց վասն օրինացն քոց որ ինձ ունել հրամայես, յաղագս որոյ և
պատիւս և պարգևս խոստանաս տալ ինձ՝ ոչ ուրուք է յերկրաւո-
րացս պատիւ մեծ և իշխանութիւն հզօր տուեալ, քան զքոյդ որ
ունիս. բայց վասն անպիտան և գարշելի օրինացդ քոց զոր ու-
նիսդ՝ դու ինքնին գլխովին որ Թագաւորդ ես և ամենեքեան որ
զայս օրէնս ունիք՝ մեռեալ համարեալ էք յաչս իմ և ոչ կենդա-
նիք, և զպատիւս քո և զփառս անարգանս համարիմ և մանկաւոյ
ծաղր և կատականս։ Եւ լուեալ զայսպիսի բանս պատգամաւորին ի

սրբոյ կաթողիկոսէն Հայոց Գիւտայ՝ ասէ ցերանելին. Թէ արդարև ի վերայ դորին բանից պնդեալ կաս՝ ապա արդար ասէիր, թէ չէիշխես տանել զասացեալս իմ առ թագաւորն, և իբրաւ ասէիր. զի ոչ ուրուք երբէք այդպիսի բանս սատմբակութեամբ յղեալ է առ թագաւոր։ Բայց տես, թէ հնար է փոխել զխօսսդ, ուշիմ լեր։ Եւ սրբոյն պատասխանի արարեալ ասէր... Դու ասացեր թէ թագաւորաց օրէնք են՝ չիշխել պատգամաւորի նուազեցուցանել բան մի ի բանից առաքողին կամ առաւելուլ։ Արդ երթ ասա՝ զոր լուար յինէն. քանզի ինձ ոչ է հնար խորհել այլ ինչ կամ ասել։ Եւ երթեալ պատգամաւորն առաջի թագաւորին՝ ասէ ցթագաւորն. Ոչ իշխեմ ես զխօսեցեալս առն յանդգնաբար երկրորդել առաջի ձեր՝ բայց եթէ ի ձէնջ հրաման առնում։ Եւ հրամայեալ թագաւորին ասել համարձակապէս զամենայն լուեալսն առանց երկիւղի՝ և պատմէր այնուհետև մի ըստ միոջէ զամենայն բանս առն Աստուծոյ Գիւտայ։ Եւ լուեալ թագաւորն զամենայն աներկիւղապէս խօսեցեալսն Գիւտայ, ի զայրացումն սրտմտութեան գրգռեալ՝ կամեցաւ տալ հրաման խստութեամբ. և յանկարծակի դադարեցուցեալ զինքն առ վայր մի լռեաց, և ապա սկսաւ խօսել և ասէ. Չէ հնար եթէ կատարին կամք խնդրոյ նորա զոր նայն կամի, և ոչ տամ համբուրել քրիստոնէից զկապանս նորա և ոչ երկիր պագանել ոսկերաց նորա։... Բայց ասա ցնա, թէ այդմ պատուոյ չտամ քեզ պատահել, զոր դու ցասուցանելով զիս գտանել կամիս յինէն. կաց ուր և կամիս, բայց ի գործոյ կաթողիկոսութեան հեռի ես, և չէ քոյ։ Կացեալ այնուհետև ի դրան ըստ իւրում կամելոյ սուրբ կաթողիկոսն Հայոց Գիւտ, բազում համարձակութեամբ պատուեալ, ոչ միայն ի քահանայից և ի քրիստոնէից, այլ և առաւել ի հեթանոսացն, որ իւրաքանչիւր ախտից գտանէին բժշկութիւն յաղօթից սրբոյն։... Եւ այսպէս պատուեալ յամենեցունց՝ ուրախալից չքեղութեամբ հրաժարէր գնալ յաշխարհն Հայոց... ուր կեցեալ առաւելապէս պատուովք քան զառաջինն՝ հանգչէր երկայն ծերութեամբ» (Փարպ. ԿԳ.)։

**12.** Յասացելոց մինչև ցարդ յայտնի է, թէ Վարդանանց կռուով, և պարտութեամբ, Փարպեցւոյն բանիւ, ուխտապահաց կողման՝ չեղաւ անհետ ոգին ազատութեան, յոր կը դիմէր այս կուսակցութիւնն, մէտ ի Յոյնս և ակնկալու օգնութեան նոցա։ Նոր ապստամբութեան մը խորհուրդը կը գործէր գաղտ, հաւանութեամբ, թերևս և յորդորելով կղերին, և փոքր առթի կ՚սպասէր գալու յերևան։ Բայց ոչ առթի միայն, այլ և առաջնորդի կարօտէր գործն, և այս կանուխ սկիզբէն կը տեսնուէր յանձին Վահա-

նայ, որ զառաքինութիւն և գքաջութիւն հօրեղբօր իւրոյ կը ցուցնէր յանձին։

Յառաջ քան զպատմել մեր առիթը, որ ընծայեցաւ պարզելու ապստամբութեան գրօշը՝ չէ անդէպ խօսել համառօտիւ այս անձին գլխաւոր հանգամանաց վրայ, զոր ընդարձակ ես պիտի տեսնենք յետոյ առ Փարպեցւոյն։ Վահան էր ըստ ոգւոյն անվեհեր, յառաջատես, ուստի և զգուշաւոր, բայց ժիր։ Զինուոր քաջ ի բնէ, անհնարին պատերազմող, ի զօրավարութեան հնարագէտ, ճարտար՝ իւր ձևովն և արութեամբ ազդել պատկառանս և ահ թշնամւոյն սակաւուք անգամ, զորս գիտէր քաջ ընարել։ Ըստ բարուցն՝ Վահան էր քաղցր, ծանր և հանդարտ, մտաց և հանճարոյ անհնարին առաւելութեամբքն հանդերձ՝ նաև հլու։ Քաջ խօսող, մանաւանդ թշնամւոյն հետ, զոր յաղթահարելու ամէն հնար ունէր իւր պարզ բայց ազդու ճարտարխօսութեամբն։ Բանակցութեանց մէջ, թէ անձամբ և թէ գեսպանօք, էր ազատ և համարձակ, առանց խոտորելու արդարութեան և հպատակութեան սահմանէն։ Երկու թագաւորի հետ ունեցաւ Վահան խօսք, Պերոզի և Վաղարշու, յարդարացումն անձին և ազգին, յերկոսին ես եղաւ յաղթող, ամբաստանելով հակառակ կողմը, մինչև խոստովանել աւագանւոյն և թագաւորին միանգամայն, թէ արդար էր Վահան, և արձակուիլ պատուով։ Զայսոսիկ դիտելով կարճ՝ յառաջ տանինք զպատմութիւն մեր։

**13.** Ըստ Փարպեցւոյն՝ Գադիշոյ Խոռխոռունի, որ է գլխաւոր կողման, դարձեալ Փարպեցւոյն բանիւ, ուրացողաց — թէպէտ մենք չենք համարձակիր տալ այս անունն այն կուսակցութեան, գէթ այն ընդարձակութեամբ որով կու տայ Փարպեցին, — կասկածանօք կը նայէր ի Վահան, թերևս առ նախանձու, բայց մանաւանդ առ երկիւղի, թէ Վահան մտաբերէր յառաջ տանել իւր հօրեղբօր գործը, ուստի և կ'ամբաստանէ զնա իւրովքն առ թագաւորն։ Վահան կ'ստիպուի երթալ առ Պերոզ, և արդարացեալ կը դառնայ յիւրսն, բայց տկարացեալ ի հաւատս. — «Եկեալ ի դրանէ և Մաղխազն Գադիշոյ, ժողովեալք առ նա դասք ուրացողացն… իբրև տեսանէին զՄամիկոնեանն Վահան այնպէս երևելի… ներկեալք խամրէին և ծնկեալք թարշամէին։ Խնդրէին ի վերայ նորա հնարս պատճառանաց, որով զնա և զեղբարս նորա կորուսանել կարասցեն. տային գիտել մեծամեծաց դրանն, այլ և էր ինչ՝ որ թագաւորին, թէ ոչ է հնար սմա առանց ապստամբութեան կեալ ի Հայս։ Ցիշեցուցանէին Արեաց և զնախնեացն նորա զմիոյ միոյ, թէ ո՛վ ի նոցանէ ոչ խռովեցոյց զԱրեաց աշխարհ և ոչ արար մեծամեծ վնասս և մահունս.

արդ՝ մեք և է՝ ասեն, սա զնոյն խռովութիւնս յարուցանելոց է ի վերայ ձեր։… Տեսեալ այնուհետև Վահանայ զայնչափ յարուցմունս նախանձաւորացն ի վերայ նորա, թէ ոչ երբեք կասեալ լեն ի չար նախանձալից խօսից. չկարացեալ տանել հանապազօրեայ բանսարկութեանն՝ երթեալ ի դուռն տկարանայր ի հաւատն. և եկեալ ի Հայս, սակայն և այնպէս խնուլ զբերանս չարախօսացն ոչ կարէր» (Փարպ. ԿԵ.)։ Թէ ինչ կը նշանակէ «տկարանալ ի հաւատս»՝ չէ ստուգիւ յայտ. թերևս տալ դաւանութիւն ըստ վարդապետութեան մոգուց, կամ թերևս պաշտօն ինչ մատուցանել արեգական և կրակի։ Այս ուրացութիւնք էին մանաւանդ հաճեցունելու համար մոլեռանդ թագաւորն, և իբրև արտաքին նշան հաւատարմութեան, ուստի և քաղաքական, քան ճշմարիտ կրօնական դարձ։ Բայց և այնպէս Վահան, յետ դարձին այսրէն ի Հայս, չկրցաւ կարկել իւր հակառակորդներուն բերանը։ «Որ ոք, ասէ Փարպեցին, բան ուղիղ ի հրապարակի առաջի իշխանի չգիտէր խօսել՝ զնա ատեայր. և որ ոք յորս կամ ի թիւրախ նետ չգիտէր ձգել՝ զնա պարտաւորէր։ Նստի, ասէին, և ամենեցուն ունչս առնէ։ Եւ որ ոք անմտութեամբ զգործս արքունի չմարթէր գործել՝ ի նա բերէր զպատճառն։ Նա, ասէին, յառաջէ յամենայն ի գործս, և չտայ ումեք գործել կամ օգտել» (Անդ)։

**14.** Եւ որովհետև, ինչպէս կը գուշակուի պատմութենէն, Վահանայ յանձնուած էին ոսկւոյ հանք, հակառակորդք, և մանաւանդ Վրիւ ումն ասորի որ գործակից էր նորա՝ սկսան ամբաստանել զնա, թէ Վահան ինքնագլուխ կը գործէր, և թէ կը խորհէր ոսկին առնլով փախչել յօտար երկիր։ Այս պատճառաւ Վահան դարձեալ կ'երթայ առ թագաւորն, տանելով ընդ իւր ոսկին, և արդարանալով կը դառնայ ի Հայս.—«Վասն զի էր նորա գործակից որում անուն էր Վրիւ, անանուն ըստ ազգի և անփորձ իրի, որդի առն աւորւոյ, բայց շատախօսութեամբ և ընդվայրաբանութեամբ առաւելեալ նմանէր ազգի Ասորոց. որոյ չմարթացեալ գործել ըզգործ արքունի՝ երթեալ լինէր ամբաստան զՎահանայ առաջի թագաւորին Պերոզի ասելով, թէ Ինձ ի գործ ոսկեհատին չետ ինչ մօտ երթալ, և իւր ժողովեալ զամենայն ոսկի աշխարհին՝ խորհի երթալ առ կայսր և կամ յաշխարհն Հոնաց, և տուեալ զոսկին կամի խնդրել գունդ և ապստամբել։ Եւ լուեալ զայս ամենայն բան ամբաստանութեան զինքենէ Վահանայ՝ առեալ փութանակի զբազմութիւն ոսկւոյն հասանէր ի դուռն։ Եւ լուեալ թագաւորին Պերոզի զճեպով երթալն Վահանայ՝ զարմացեալ ասէր. Եկդ Վահանայ այդպէս երագ՝ շատ ընդդէմ է բանիցն Վրուայ, մանաւանդ եթէ

բերեալ ևս ինչ է։ Եւ եղեալ յանդիման թագաւորին՝ տեղեկանայր ի նմանէ թագաւորն Պերոզ, թէ արդարև բերեալ ինչ է. և լուեալ ի Վահանայ զքանիօնութիւն բազմութեան ոսկւոյն զոր բերեալ էր՝ ուրախ լինէր յոյժ։ Ապա և յանդիման Վահանայ տայր ասել Վրուայ զբանսն՝ զոր ասէր զնմանէ յառաջագոյն։ Եւ լուեալ Վահանայ զամենայն ասացեալսն Վրուայ՝ ետ պատասխանի առաջի թագաւորին և ասէ. Գիտեմ և ես զանիմաստութիւն անձին իմոյ, ըստ ցուցանելոյ զիս ձեզ Վրուայ. բայց սակայն այնքան կոյր չեմ, թէ զԱրեաց ոյժ և տեսանել անգամ չգիտեմ. որոյ ուժոյ զբազում ազգս ապստամբաց հարեալ է սաստիկ երկիւղիւ, և հնազանդեցուցեալ ընդ իւրեանց ձեռամբ ունին։ Իսկ ես որ ապստամբելս կամիմ ըստ դորա ասելոյդ՝ դոյն իսկ ինքն գիտէ, զի մի ծառայ չգտանի իմ, որ ինձ խոհակերութիւն առնէ, և ոչ երկուց կամ երից պատանեաց իշխեմ տիրաբար, որ ինձ երկիւղիւ սպաս ունին. գնդի իմ ոյժ այդ է։ Բայց եթէ նեղ ինչ էր ինձ ի ձէնջ, և ուրեք յօտար երկիր գնալ և կորնչել կամէի, զայդչափ ոսկի այսր զի՞ բերէի, որ մինչև ցմահ իմ, թէև վարի շատ կէի՝ իմում անձինս, այլ և տասանց ևս ընդ իս թոշակ շատ էր և բաւական. և զայլ ոք ոստիկան ձեր յիմ վերայ չէր կացուցեալ, որ հարկէ տայր բերել այսր զայդչափ բազմութիւն ոսկւոյ։ Բայց թէ վաստակել գիտեմ ձեզ՝ դուք կարող էք զիս, թէ կամիք՝ կեցուցանել վաղվաղակի և առժամայն մեծացուցանել, որպէս և կամիք։ Եւ լուեալ զայս թագաւորին Պերոզի և աւագանւոյն՝ ամենեքին իրաւացուցին զխօսս Վահանայ քան զխօսս Վրուայ։ Եւ ելանէր Վահան արդարացեալ յատենէն, և որդի ասորւոյն Վրիւ ելանէր ամաչեցեալ և արհամարհեալ։ Եւ հրաժարեալ Վահանայ ի դրանէ՝ մեծարանօք և բազում շքեղութեամբ եկեալ հասանէր յաշխարհս Հայոց» (Անդ)։

**15.** Վահան ունէր խայթ խղճի վասն ուրացութեանն, և կը խնդրէր առիթ սրբելոյ զայն աղտ. ուստի մինչ նա այս խորհրդով կը տագնապէր՝ յարեաւ խռովութիւն ի Վիրս։ Բուն Վրաց թագաւորն Վախթանգ սպան զուրացեալ բդեշխն Գուգարաց Վազգէն։ Հայք որ էին զինուորութեամբ յԱղուանս և էին դժգոհ ուրացեալ հայ իշխաններէն մանաւանդ քան Պարսից զօրագլուխներէն, լսելով Վրաց ապստամբութիւնը՝ կ'ուրախանային, բայց կը կասկածէին թէ տարուէին Պարսկաստան. իսկ երբ զերծան այս երկիւղէն և եկան ի Հայս՝ խորհեցան ապստամբել, և զայս խորհուրդ յայտնեցին Վահանայ, որ գիտէին թէ խղճիւ էր ուրացութեան համար։ Վահան ի սկզբան կ'ընդդիմանայ նոցա, ցուցնելով նոցա զզօրութիւնն Պարսից, զթուլութիւն և զխաբէութիւն Յունաց, զտկարութիւն Վրաց

յորս յուսացեալ էին, զանստուգութիւն օգնութեան Հոնաց, և մանաւանդ զիւրեանց անհաստատութիւն. բայց յետոյ կը հաւանի, և բերել տալով զԱւետարանն՝ կ՚երդնուն ամենեքին մինչև ի մա՜հ հաստատուն մնալ.—«Եւ քանզի չէր խաղաղութիւն մտաց նորա (Վահանայ) զամենայն օր վասն վատ անուան ուրացութեանն՝... հնարս հայցէր և անդադար խնդրէր ի Փրկչէն Քրիստոսէ շնորհել նմա ժամ բարի:... Եւ մինչդեռ Վահան յայսպիսի յուզմունս մտաց կայր տարակուսեալ՝ լինէր յանկարծակի խռովութիւն յուզմանց աշխարհին Վրաց: Վախթանգ սպանանէր զբդեշխն զանօրէնն Վազգէն յամի քսաներորդի հինգերորդի Պերոզի արքայի: Զայս լուեալ Հայոց աշխարհիս մարդկան, յորոց բազումք այն ամ յԱղուանս էին յապըստամբ ամրականացն կռուի, որոց զօրագլուխ էր Զարմիհր հազարապետ, և Հայոց աշխարհիս Ատրվշնասպն Յոզմանդեան էր մարզպան,... ցնծալին ուրախալից սրտիւ, վասն զի գայր առ նոսա համբաւ, թէ Վրաց արքայ ասէ, թէ Ես միում ումեք զկռիւ չտամ տեսանել, այլ այնչափ հանեմ Հոնս՝ որում ոչ կարիցեն հարկանել ի դիմի զօրքն Պարսից: Զօրացեալք յայնպիսի համբաւոյ՝ ակն ունէին օգտի... բայց երկնչէին թէ մի գուցէ առեալ զգունդն Հայոց զօրագլխացն Պարսից՝ ի դուռն գումարիցեն: Այլ յայնպիսի կարծեաց զերծեալ գային ի Հայս, և եկեալք ի գաւառն Շիրակայ, ի դաշտն ուր բնակէր մարզպանն Հայոց Ատրվշնասպ Յոզմանդեան, և առնմին հազարապետն Հայոց Վեհվեհնամ, խորհուրդ ի մէջ առեալ ոմանց նախարարացն Հայոց, որ զտրտմելն և զտարակուսելն ի բազում ժամանակաց գիտէին զՄամիկոնէին Վահանայ յաղագս մոգութեանն անուան, և ասէին, թէ Կարի պատեհ է և մեզ և նմա ժամս այս փրկութեան, նմա՝ ապրել ի խղճէ մտացն իւրոց, և մեզ՝ զերծանել ի հանապազօրեայ կասկածանացս և յարաժամ հարանացս, որոց ծառայեմքս ի հարկէ հեղձամղձուկս նախանձու: Եւ արքայդ Վրաց Վախթանգ արեացի է, օգնեսցէ մեզ, և հանդերձ Վրօք թերեւս կարող լինէաք առ սակաւ մի աշխատ առնել զՊարսիկս:... Յայտնէին այնուհետև համարձակեալք ի գիշերի միում զբանս մըտածութեանն իւրեանց Մամիկոնէին Վահանայ, որոյ լուեալ ասէր ցամենեսեան. Գիտեն ոմանք որ էք ի խորհրդիս յայս, թէ որպէս վտանգեալ տագնապիմ յամենայն ժամու վասն սուտ անուանս զոր ատելութեամբ կրեմ յանձին իմում... կամէի գտանել հնարս և զերծանել ինձ ի խղճէս որ նեղէն զիս... բայց միաբանել խորհրդոյդ և ասել ձեզ, թէ լաւ է իմաստդ և արարէք՝ ոչ կարեմ ասել և չիշխեմ. վասն զի զԱրեաց ուժն և ստամբակութիւն քաջ գիտեմ, և զՀոռոմոց զթուլութիւնն և զխաբէութիւնն, և զձեր ծանուցեալ

է փորձիւ իմ, թէ որպէս հարանց մերոց ուխտեցին երգմամբ և ստեցին. և վասն Վրաց արքայի և Հոնացդ զօրս առէք՝ Վիրք տառանձին թերթև ինչ աշխարհ են և այլուձիով սակաւաւորք. բայց վասն Հոնաց՝ ո՞ գիտաց, հաւանի՞ն գալ թէ ոչ, որք չեմն ի միջի և չերևին։ Բայց քան զամենայն ևս առաւել յանձանց երկերուք, վասն զի մարդիկ սուաք էք և անվստահք… Յընդունայն և յանպիտան խորհուրդս ձեր զիս մի աշխատ առնէք։ Եւ լուեալ զայս ամենայն բանս Նախարարացն Հայոց ի Մամիկոնենէն Վահանայ՝ ետուն պատասխանի միաբանութեամբ և ասեն. Զամենայն զոր ասացերդ՝ զի ասացեր, որպէս վայելէ քում իմաստութեանդ, ճշմարիտ ասացեր և արդար. բայց զկոյս մեր ոչ ի Հոռոմս եդեալ է և ոչ ի Հոնս, բայց նախ յողորմութիւնն Աստուծոյ… և ապա ի մահ անձանց մերոց։… Եւ լուեալ զանունն մահուան Մամիկոնէին Վահանայ և քաջի եղբօր նորա Վասակայ՝ քաջալերեալք զօրացան։… Սկսաւ խօսել Մամիկոնեանն Վահան և ասէ. Դուք գիտէք, զի Վարդ, իմ եղբայր, ի դրանն է. և գիտեմ եթէ լուեալ զխորհուրդս մեր Պարսկաց՝ կապեն զնա և վշտացուցանեն. բայց ի մահ յօժար եմ քան այսպէս կեալ ուրացութեամբ… և ամենագիտին հայեցեալ ի դարձս իմ՝ տացէ յիս նշան բարի և դարձուսցէ առ իս զանձկալի եղբայրն իմ զՎարդ ողջ… և զայս ասացեալ յառնեն ամենեքեան… և մատուցեալ յառաջ սրբոյ քահանային որում անունն Աթիկ, այր բանիբուն բանիւ և խորհրդապահ սրտիւ, յերևելի գեղջէն որ կոչի Բճնի, և բերեալ սուրբ Աւետարան՝ ողջունէին ամենեքեան… և երդուեալք ի գիշերին և հաստատեալ ի հաւատն Քրիստոսի և հրաժարեալք ի միմեանց՝ յիւրաքանչիւր վանս գնացին հանգչել» (Փարպ. ԿԵ, ԿԶ.)։

**16.** Միաբանեալ նախարարներէն մին, Վարազ-Շապուհ Ամատունի, կը յայտնէ ապստամբութեան խորհուրդը մարզպանին, որ գիշերային կը փախչի Արտաշատու բերդն, և անտի Ատրպատականի կողմը.—«Մի ոմն ի Նախարարացն Հայոց, որում անունն էր Վարազ-Շապուհ, ի տոհմէն Ամատունեաց, ելեալ ի խորհրդենէ միաբանութեանն՝ գնաց ի նմին գիշերի և պատմեաց մարզպանին և այլոցն ամենեցուն զխորհուրդ միաբանութեանն և զերդումն Աւետարանին և զխօսս ամենայն Նախարարացն Հայոց։ Զոր իբրև լսէր մարզպանն Ատրվշնասպն և այլ պարսիկ մարդիկն և ջոկք ուրացողացն Հայոց՝ սրտաբեկեալք զարհուրէին և. անքունք լինէին զմնացեալ մասն գիշերոյ յերկիւղէ։ Հասեալք ի ժամ առաւօտուն՝ չուէին ի տեղւոյն և երթեալ բանակէին մօտ ի պարիսպ բերդին որ անուանեալ կոչի Անի։… Եւ ի նմին գիշերի հեծեալք յիւրաքանչիւր երիվարս մարզպանն և հազարապետն և որք ընդ նոսա

միաբանք էին՝ փախստականք լինէին։ Զոր զգացեալ նախարարացն Հայոց՝ հետամուտ լինէին զկնի փախստէիցն. և վասն զի անղեակ առաջնորդօք փախչէին մարզպանն և հազարապետն, ոչ ընդ ուղղորդ տեղիս ճանապարհացն, այլ ընդ այլ և այլ տեղիս՝ զերծեալք անկանէին ի բերդն Արտաշատու, որոց ոչ կարէին հասանել նախարարքն Հայոց. բայց զզրաստ ամենայն պարսկացն կալեալ ըմբռնէին ի ճանապարհին, և զՄախազն Գադիշոյ ձերբակալ արարին, ածէին ընդ ինքեանս, և հասեալք ի Դուին, երթեալ պաշարէին զբերդն Արտաշատու։ Իսկ մարզպանն և հազարապետն գաղտ ի գիշերի ելեալ ի բերդէն փախստեայ գնային ի կողմանս Ատրպատականի» (Կէ.)։

Հոս Փարպեցին կը յիշէ ուրիշ մատնիչ Վարազ-Ներսեհ անուն, Ուրծայ իշխանին որդին, որ կողոպտելով երևելի քաղաքը, Բռնավիժի շահաստան, կ'ապաւինի Սագրայ բերդը։ Բռնավիժի շահաստան, ինչպէս նաև Ուրծ և Սագրայ բերդ՝ են անծանօթ անուանք. վերջին երկուքը կը թուի թէ էին ի Սիւնիս.—«Սեպուհ մի Ուրծացի, որում անուն էր Վարազ-Ներսեհ, որդի Կողթեկայ իշխանին Ուրծայ, որ էր յերդմանն ընդ նախարարսն Հայոց, նենգեալ ուխտին սրբոյ՝ երթեալ աւերէր զշահաստանն Բռնավիժի, և առեալ զամենայն կարասի շահաստանին՝ գիմեալ ամրանայր ի բերդն որ անուանեալ կոչի Սագրայ բերդ, որ էր բերդ ամուր իշխանութեանն իւրեանց» (Անդ)։

**17.** Հայ նախարարներէն ոմանք որ էին ընդ Ատրվշնասպայ՝ խորհուրդ կու տան նմա փութալ հասնել Հայոց վրայ, որ դեռ անպատրաստ էին և անօգնական, և մարզպանն անսալով նոցա կը գառնայ ի Հայս մինչ ի Նախճաւան։ Սահակ Բագրատունի և Վահան, զորոց առաջինը կացուցին Հայք մարզպան, և զերկրորդն սպարապետ, խորհելով նախարարաց հետ՝ կը ղրկեն Ատրվշնասպայ վրայ չորս հարիւր զօրօք և երևելի իշխանօք ոմամբք զՎասակ, զեղբայր Վահանայ, որ կը փութայ առաջն առնուլ Պարսից, առ ի չտալ նոցա անցանել զԵրասխ, բայց հասնելով ի Վարազկերտ՝ (տեղի մօտ ի Նախճաւան) կը լսէ, թէ Պարսիկք անցած են գետը, ուստի դնելով բանակը հոն՝ կ'երթայ իւր գնդով յառաջ մինչև ի գիւղն Կռուակ սակաւուք։ Ատրվշնասպ կը հասնի հոն իւր եօթն հազարօք. Վասակ հնարիւք արձակելով զիւր մարդիկն ի Վարազկերտ, ինքն ևս խաբելով զԱտրվշնասպ, թէ իբրև պատգամաւոր եկած է՝ քաջութեամբ կը մեկնի, և գալով առ իւրսն կու տայ լուր, թէ անպիտան է Պարսից գունդը։ Խորհուրդ կ'ընեն դէմ դնել նոցա, եթէ յարձակին, բայց գալով լեռնակողմը՝ կը բանակին յԱկոռի։ Հոն

լինի խառնուրդ, ուր Հայք կը յաղթեն, Ատրվշնասպ և ուրիշ երեւելիներ, ըստ Փարպեցւոյն, կ՚սպանուին, և մնացեալք կը ցրուին.

—«Իսկ ոմանք ի Հայ նախարարացն խրատ տուեալ մարզպանին Հայոց Ատրվշնասպայ ասէին, թէ թագաւորն Վրաց ապստամբեալ է և Հոն կամի հանել, բայց հանեալ չեւ ևս է. և դարձեալ՝ Հայոց առ կայսր զգնդէ յղեալ է, և դեռ չեւ ևս եկեալ ի միջի. և ինքեանք չեւ ևս քաջ կազմեալ են որպէս արժան է. և դու թէ այժմ փութով հասանես ի վերայ նոցա՝ դիւրով և թեթեւով վճարեսզգործ մի կարի մեծ, և լաւ անուն յանձն առեալ՝ պատիւս և շատ պարգևս գտանեմք յարքայից արքայէ և դու և մեք.... Եւ հաճոյ թուեցաւ բանն մարզպանին և ամենեցուն որ ընդ նմայն էին, և վաղվաղակի յԱտրպատականէ գունդ առեալ և ի Կողբեաց մարզպանէն, և զգունդն Կառշաց՝ գայր հասանէր յաշխարհն Հայոց ի գետեզրն Երասխայ, կամեցան անցանել ի գեւղն որ կոչի Նախճաւան, ի սահմանակցութեան Սիւնեաց։ Այլ եղև առ տէրն Բագրատունեաց Սահակ և առ Վահան,... որք ի Հայոց ընկալան զգործակալութիւնն (առաջինն՝ զմարզպանութեան, և երկրորդն՝ զսպարապետութեան), եկն Պարսից գնդին, և տեսեալ դեռ ևս անկազմագոյն զպատրաստութիւն զօրուն իւրեանց՝ խորհէին առ վայր մի յամուր տեղիս գաւառին Տայոց չուել. այլ յիշելով, թէ ոչ է յաղթութիւն ի բազումս և ի սակաւս՝ խորհեցան սատիպով ընդդէմ նոցա գնալ. խորհէին և զայս—մնալ մարզպանին Սահակայ և սպարապետին Հայոց Վահանայ և ոմանց յայլ նախարարացն անդէն յոստանին։ Եւ որք ի պատերազմն կազմեցան՝ էին Սիւնին Բաբգէն, զոր անուանեցին ի ժամուն իշխան տէրութեան Սիւնեաց, և ամենալաւ քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, եղբայր սպարապետին, և Գարջոյլն Մաղխազ, և երկոքեան որդիքն երանելոյ Կամսարականին Արշաւրայ, Ներսեհ տէր Շիրակայ և Հրահատ նորին եղբայր, և երկու արք ի Գնունեաց տոհմէն, Ատոմ իշխանն Գնունեաց, և եղբայր նորին Առաստոմ, և գունդ ընդ նոսա, որ էին թուով ընդ բնաւ չորեքհարիւր այր.... Երկիր պագանէին նախարարքն և ամենայն արք զօրուն որք ընդ նոսայն էին հրեշտակակրօն սրբոյ կաթողիկոսին Յոհաննու... և ապա հրաժարէին յասպետէն ի Սահակայ, մարզպանէն, և ի զօրավարէն Հայոց Վահանայ Մամիկոնենէ և յայլ ընկերակցաց իւրեանց որ անդէն յոստանին առ նոսա մնալոց էին, և գնացին սատիպով խնդալից յօժարութեամբ։ Եդեալ ի մտի ասէին, Ո՛վ գիտէ, կարեմք հասանել ի հունն ուր գունդք Պարսից անցանել կամին, և դարձեալք յանհրեւոյթ տեղւոջ ուրեք սպասեմք. և յորժամ գիտեմք, եթէ կէս գնդին անցեալ է ընդ

գետն՝ անկանիմք ի վերայ անցելոցն, և թերևս վնասել ինչ կարեմք. նոյնպէս և մնացելոցն ի նոցանէ դարձեալ դիւրով կարեմք լինել գամագիւտ։ Եւ եկեալք ի գեւղն որ անուանի Վարազկերտ, լուան եթէ գունդն Պարսից անցին ընդ գետն ամենեքեան, և են թուով եօթն հազար։ Եւ քաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, քանզի առաջապահ էր այն օր՝ գնայր յառաջ ի գեօղն որ անուանի Կուակք։ Թերևս լիցի ինչ հնար, ասէ, ջանամ առնուլ զգնդին Պարսից զհանգամանս, թէ են ինչ և թէ ոչ։ Եւ երթեալ ի Կրաւակս յօթ՝ յանկարծակի յառաւօտուն ծագել հասեալ ի նոյն գեւղ և մարզպանն պարսիկ Ատրվշնասպ՝ լսէր զՄամիկոնենէն Վասակայ, թէ անդ է։ Եւ քաջ սեպհին Մամիկոնէից Վասակայ գիտացեալ զԱտրվշնասպայ և զնոցանէն որ անդ էին՝ հնար փրկութեան քաջութեամբ խորհեցաւ, որով զգունդն իւր ապրեցուցանել կարասցէ ի ժամուն։ Հրաման տայր երկուց երկուց զոյգ, և կամ երից և կամ ևս յոլովից, ընդ այլ և այլ անյայտ տեղիս և ընդ փողոցս ելանել ի շինէն, և զատ ի միմեանց փութալ հասանել ի գեւղն Վարազկերտ, ուր նախարարք և այրուձին Հայոց էին, և տայր գիտել նոցա։ Եւ ինքն քաջ սեպուհն պատրողական բանիւք բանդագուշացուցանէր պատգամաւորօք զԱտրվշնասպ ասելով, թէ Ես պատգամ ունիմ առ քեզ զՀայոց, զորս լուեալ քո և որք ընդ քեզ են՝ հաստատ հաճոյ համարիք և օգուտ զայնպիսի լուր և՛ Արեաց տեառն, և՛ Հայոց աշխարհիս։ Եւ Ատրվշնասպայ լուեալ թէպէտ և գաղտ ի միտս ուրախանայր, կարծեցեալ թէ հաստատ ի նուաճումն գան՝ այլ սակայն առ նա խստագոյնս յղեալ ասէր, թէ Աշխարհ մի ապստամ առ իս զինչ պատգամ յղեն։ Եւ քաջի սեպհին Մամիկոնէից Վասակայ գիտացեալ զիւր այրուձին զերծեալ անվնաս, և թէ չիք ինչ կասկած այնուհետև՝ պատասխանի տրարեալ եկելոցն յԱտրվըշնասպայ ասաց, թէ Մեր ցայժմ ոչ վատ ինչ գործեալ է և արքունի իրաց վնաս տրարեալ. բայց դու ինձ հրամայեա ասել զպատգամն, և ձեր լուեալ՝ ապա հայեցարուք յարժանն, և ծաներուք զոր ինչ պարտ է առնել։ Եւ արձակեալ զպատգամաւորն և ինքն հեծեալ յերիվարն՝ ասաց ցայլ Պարսիկսն որ կային անդ, թէ Ես ծաղր առնելով ընդ ձեզ խօսեցայ զբանսն առ պատգամաւորսն. այլ զիս ուրուք առ ձեզ պատգամ չէ յղեալ. բայց ես տեսանել զձեզ եկի, թէ որպիսի՛ ինչ էք. այլ դուք էք մարդիկ վատք և անպիտանք, և եկեալ էք ի վատի խնդիր, և պատահէք չարի և կորնչիք։ Ասացեալ այսպէս քաջի առն՝ գնաց ինքն ի բաց անհոգութեամբ և աներկիւղս։ Եւ եկեալ քաջն ի գունդն Հայոց՝ պատմեաց նոցա, թէ գունդ բազում է, բայց յոլովք ի նոցանէ անպի-

տանք են։ Եւ լուեալ զայսպիսի բանս ի քաջ Մամիկոնեան սեպուհէն միաբանութեամբ արք զօրուն Հայոց՝ խորհուրդ ի մէջ առին, թէ պարտ է ի դաշտէն ի լեռնակողմն փոխել. զի եթէ հարեալք ասեն, ի դիմի զօրեմք՝ այն աջող իսկ է և բարի, և եթէ այլազգ ինչ դիպի՝ պահպանութիւն է մեր ամրութիւն լեռնակողմանն և օգուտ մեզ։ Եւ եկեալք չուեալք բանակեցան ի գեւղն Մասեաց, որում անուն էր Ակոռի։

«Եւ լուեալ թէ առ վաղիւ գունդն Պարսից գայ ի վերայ նոցա ի պատերազմ... կազմէին և նոքա որ անդ էին ընդդէմ նոցա ի պատերազմ։ Եւ բաժանեալ զչորեքհարիւրսն ի չորս առաջս՝ միջին վայրին կարգէին զօրագլուխս ի ժամուն զիշխանն Սիւնեաց Բաբգէն և զքաջ սեպուհն Մամիկոնէից Վասակ, և ահեակ կողմանն զԳարջոյլն Մաղխազ, և կողմանն աջոյ զԳնունիսն երկոսին, զիշխանն Գնունեաց Առամ և զնորուն զեղբայրն զԱռաստամ. և ընդ մէջ երկոցունց մասանցն զքաջն և զընտիրն զիշխանն Շիրակայ զՆերսեհն Կամսարական և զնորուն եղբայրն զՀրահատն պատրաստական յօրինէին. զի որ կողմն տկարասցի՝ ասեն, նոցա հասեալ փութով զօրացուցեալ օգնեսցեն, և յամենայն կողմանց ույժ լինիցին. քանզի ամենեքեան վստահ էին յարսն՝ որպէս ի լաւսն և յարդարսն յուխտապահսն։ Եւ այսպէս յօրինեալ զչորեքհարիւր արսն՝... ելեալ կային ճակատեալք ի վերայ բարձրաւանդակի լանջակողմանցն։ Զորոց զսակաւութիւնն տեսեալ զօրացն Պարսից՝ ոչինչ այլ կարծեցին՝ բայց եթէ կամաւ խելացնորեալ ի խնդիր մահու են եկեալք։ Եւ քաջ ի հեռաստանէ այլընտիր ի զօրացն Պարսից յարձակեալք ի վերայ զօրացն Հայոց՝ բազումք լեսսէին վառաձիոցն Պարսից, և քաջաձիքն յառաջեալ հասանէին ի տեղի պատերազմին։ Յորս և ի ժամուն Մաղխազն Գարջոյլ առեալ զիւրև զհարիւրսն, նեղեալ ուխտի Աւետարանին՝ ի գունդն Պարսից անկանէր, և մնային երեքհարիւրքն Հայոց, որք դիմեալք ի վերայ զօրացն Պարսից՝ զընտիր արս պատերազմին անդէն և անդ ի տեղւոջն դիաթաւալ յերկիր կործանէին, և զայլ բազմութիւն գնդին Պարսից ձորոց և առապար տեղեացն ցրուեալ վատնէին։ Անդ ի կողմանն քաջին Վասակայ սեպուհին Մամիկոնէից և Սիւնոյն Բաբգենայ անկեալ սատակէր Ատըրվշնասպն մարզպանն և այլ արք աւագք և նախարարք յուրացողացն Հայոց, և այլ բազում Պարսիկք. նոյնպէս և ի կողմանն Առամայ և Առաստամայ բազումք մեռանէին ի քաջ արանց։ Եւ տէրն Սիւնեաց (Բաբգէն) զԳդիհոն պահելով միւսում ևս չար ժամու՝ զերծեալ ապրեցուցանէր զթշնամին արդարութեան մազապուրծ ի ձեռացն Առամայ և Առաստամայ։... Եւ մինչդեռ նոքա այսպէս քա-

Ջալերեալք էին՝ առեալ Գարջուլայն Մախազու զգունդն Կատշաց հանդերձ և այլ ապստամբօք հայ որերոյ և այնու ևս գնդաւ որ ընդ իւրն էին, և յայլ կողմն կարթեալ՝ ըստ աներևոյթ ձորոցն խորութեան հասեալ կայր զկնի ուխտապահ զօրացն Հայոց ի կողմանէ, կամէր ի թիկանց կուսէ անկանել ի վերայ (Հայոց) և տանել զյաղթութիւնն խաբէութեամբ, և անուն մեծ ժառանգել։ Իսկ ուրումն յանկարծակի զձայն խողխողման զհայ սպանելոյ ի Կատշացն լուեալ՝ բողոք արկանէր առ արս Կամսարականս. որոց ցաւուցեալ առնն կամէին սպանանել զնա, թէ Գունդ մեր է, և դու խաբէութեամբ զմեծ իբս կորուսանես։ Եւ ապա հաստատեալ Ներսեհի ի լրտեսելն եղբօր իւրոյ Հրահատայ, եթէ գունդն թշնամեաց է՝ դիմեալ յարձակէին ի վերայ այնչափ բազմութեան երկոքին եղբարքն սակաւ արամբք։ Անդ հասեալ հայրանման Կամսարականն Ներսեհ՝ զզօրագլուխն Կատշաց, զայր հզօր և զմարտիկ, հարեալ նիզակաւ անդէն ի տեղւոջն սատակէր, և զայլ ամենայն գունդն արկեալ առաջի՝ բազում արանց դիակունս առաւել քան զայլ մեռեալս պատերազմին կործան յերկիր վարէին։ Եւ լինէր օրն այն օր նշանաւոր ուրախութեան» (ԿԷ—ԿԹ.)։ Փարպեցին Հայոց կողմանէ անկեալ զօք չյիշեր, և այս արդարև է զարմանալի։ Ապաքէն փոքր էր կռիւն, բայց յաղթութիւնն մեծ—չորս հարիւր մարդ եօթն հազարի դէմ, արդարև անհաւատալի, մանաւանդ զի Գարջոյլ հարիւր մարդով պատերազմին ժամանակ անցաւ Պարսից կողմը. բայց Փարպեցին կը պատմէ այնպիսի պարզութեամբ և մանր՝ որ, ըստ մեզ, չթողուր տեղի տարակուսանաց։ Եթէ խորհինք Պարսից խառնաղանձ զօրուն, թէպէտ բազում, անտեղեկութիւնը պատերազմական արուեստի և տեղւոյն, և մերոց հմտութիւնն յերկրին ևս՝ զարմանալի չեն թուիր այսպիսի յաղթութիւններ, որոց նմաններն պիտի տեսնենք յետոյ։ Սա ևս գիտելի է, զի նախարարք մեր, որ էին ի բնէ զինուոր և քաջ զօրապետ՝ ուշ ունէին միշտ թշնամի զօրաց գլխաւորներն սպաննել, այսու դիւրաւ կը ցրուէր անկիրթ բազմութիւնն։ Զայս գնելով իբրև ընդհանուր դիտողութիւն՝ մատչինք յառաջ։

**18.** Ոմանք ի չարամիտ մարդոց կը բերեն սուտ համբաւ մարզպանին Սահակայ և սպարապետին, թէ Հայք պարտեցան, Վասակ և ընկերք նորա մեռան։ Բայց իսկոյն հասնելով Առաստոմ Գնունի՝ կու տայ յաղթութեան լուրն յուրախութիւն ամենեցուն. յետոյ կու գայ նաև զօրն.—«Եւ տեսեալ այնպիսի փառաւորապէս կատարումն գործոյ թշնամւոյն արդարութեան Սատանայի և ի կոր կործանեալ, խորհեալ թէ կարի անհնարին ամենայն ինչ ընդդէմ

*իմոց կամացս գործեցան, և արդ յայլ ինչ չեղէ ձեռնհաս և նկուն-
դտալ, գոնէ առ վայր մի արտմեցուցանեմ զսիրտս քաջացն, որք
դեռևս ոչ գիտեն զանցս աղետից իմոց և զկործանմանս։ Եւ գտեալ
իւր արս երկուս արքանեկեալս, զմին ի տոհմէն Գնթունեաց որում
անուն էր Վարդոշ, և միւսն ի տոհմէն Սահառունեաց որում ա-
նուն էր Վասակ, ի վաղիւն ճեպով ընդ ծագել առաւօտուն գոյժ
աղաղակի լսելի առնէին յականջս հայրապետին սրբոյ Յովհաննու
և երկոցունց աւագ իշխանացն Հայոց, մարզպանին Սահակայ և Վա-
հանայ Մամիկոնենի. Խառնեցան, ասեն, սաստկապէս կազմանք եր-
կոքեան ի պատերազմ, և զօրացաւ կողմն Պարսից, և ի պարտու-
թիւն մատնեցաւ գունդն Հայոց, ի փախուստ դարձան անկեալ զօ-
րաւորքն ի սուր թշնամեացն, մեռան քաջն Մամիկոնեան Վասակ և
լաւ Սիւնին Բաբգէն, և երկոքեան արքն անուանիք աէրն Շիրակայ
Ներսեհ սիրելի եղբարբն իւրով հանդերձ Հրահատաւ։ Եւ արքն
Գնունիք Ատոմ և Առաստոմ, և այլ ամենայն զօրքն Հայոց ի լան-
ջակողմանս Ակոռայ տապաստ անկեալ դիականացան, և մեք միայն
մնացաք գալ պատմել ձեզ։ Եւ չև ևս սփռեալ տարածանէր համ-
բաւս այս ի Դուին՝ գայր հասանէր վաղվաղակի հրեշտակ աւետա-
ւոր ի տոհմէն Գնունեաց, որում անուն էր Առաստոմ, ձայն բար-
ձեալ գոչելով տայր զրոյց զչարաչար բեկումն և զամօթ թշնա-
մեացն։... Եկեալ հասանէին և զօրքն ի պատերազմէն, պատմելով
զմեծ յաղթութեանն անուն, և զթշնամեացն զխորտակմանն և զա-
մօթոյ զվիճակն։ Համբուրէին զմիմեանս ողջունիւ ուրախութեան,
և անհոգ խաղաղութեամբ ի հանգիստ ձմերայնոյն մտանէին. հո-
գայքն առ գարունն զպատրաստութիւն պատերազմին»* (ԿԹ, Հ.)։

**19.** *Հայք կը խնդրեն Հոնս յօգնութիւն ի Վախթանգայ բռնա-
խաստման նորա, և նա կուղարկէ նոցա երեքհարիւր հոն, բայց յե-
տոյ կը կոչէ յետս. այսպէս Հայք կը մնան անօգնական։ Վահան-
մտնելով ի Նեղ՝ կը ղրկէ պատգամ յԱրծրունիս, յԱնձևացիս, ի Մոկս
և ի Ռշտունիս. ոմանք անսալով կու գան, շատք կը մերժեն հրա-
ւէրը։ Դիտելու արժանի է Վահանայ սրտառուչ հրաւէրը.—«Եւ դես-
պան ստիպով առ Թագաւորն Վրաց Վախթանգ առնէին՝ տալ նո-
ցա հոն ըստ բանի խոստմանց իւրոց։ Եւ նա ժամավաճառ բա-
նիւք երկայնէր զասացեալսն իւր. և ապա ուստեք ժողովէր հոնս
երեքհարիւր և առաքէր ի Հայս. և չև ևս անցեալ ամիս մի ի
ձմերայնոյն՝ անդրէն առ ինքն կոչէր։ Եւ մնայր աշխարհիս Հայոց
զօրութիւն օգնութեան Քրիստոս, յոր ապաւինեալն էին և յուսայ-
ին, այլ ի մարդկանէ ոչ ոք էր որ օգնէր նոցա։ Առաքէր զօրա-
վարն Հայոց Մամիկոնեանն Վահան յերևելի և յականաւոր ազգն*

Արծրունեաց, յազգս գաւառին Անձեւացեաց և Մոկաց և առ ազատորեարն Ռշտունեաց. տայր գիտել թէ որպէս յառաջնումն օգնեաց Աստուած յուսացելոց իւրոց, և ասէր, թէ Ճշմարիտ և զորդար օրինացս մերոց զհաւատ և զքարոզութիւն իւրաքանչիւր ոք ի ձէնջ քաջ գիտէք, և ոչ էք կարօտ յումեքէ ուսանել, այլև զտոչրումն իբրև հնոց մոլորութեան մոգուցն, տեսէք թէ որպէս առեալ այրեաց զամենեցուն ոգիս բաց ի սակաւուց։ Արդ աւասիկ եհաս ժամ արդար մշակին Քրիստոսի, որոյ առեալ զհեծանոց սրբել զկալ իւր, և զցորեանն մաքրեալ յերկնից շտեմարանս ժողովել, և զյարդն անշէջ յաւիտենից հրոյն մատնել յայրումն։ Եւ արդ որ ոք կամի լինել ցորենահատ՝ ընծայեսցէ զինքն Աստուծոյ և կեցցէ. և որ ոք յետս ընկրկեալ յարդեսցի՝ յաւիտենից և անանց գեհեննին եղեալ լուցկիք՝ այրեսցի և մի շիջցի։ Եւ ես ոչ զոք բռնաբարելով քարշեմ յօգուտ իւրաքանչիւր անձին, այլ յորդորելով յիշեցուցանեմ ամենեցուն ըզփրկութիւն և զկորուստ, որ դիպի յայցելութեան աւուրն։ Արդարև ժամանակին դիպաց հանգոյն և վայելուչ հրաւէր, ուր այնչափ զարմանալի և բարձր է որչափ ոգին՝ նոյնչափ ճարտարխօսութիւնն։ «Եւ լուեալ զայս պատգամ չորեցունց գաւառաց նախարարացն՝ յարէ Փարպեցին, կէսքն փափաքեալ աջոյ կողմանն՝ զրոհ տուեալ ընթանային ի հօտ ոչխարացն ժամանել, և այլք ընդ դասակս այծեաց ձախակողման հաղորդեալք՝ գնային անդարձութեամբ ի խաւարն արտաքին» (Փարպ. Հ.)։

Հոս հաւատարիմն Փարպեցի կը մուծանէ միջին ինչ դիպուած (épisode), որ կը ցուցնէ, թէ յոր աստիճան հասած էր երկպառակութիւնն յայնժամ ի մէջ Հայոց։ Յովհան ոմն իշխան, սեպուհ Անձեւացի, և միւս ևս սեպուհ Ներսեհ անուն, Երուանդունի, հանդերձ այլովք ոմամբք կ'երթային յօգնութիւն Վահանայ։ Սեւուկ ոմն իշխան Անձեւացեաց և Յովհան իշխան Մոկաց իմանալով՝ կը յարձակին ի վերայ բազմութեամբ այրուձիոյ՝ արգելել զնոսա, կը դրդուի պատերազմ երկու կողման մէջ, կ'սպանուի Յովհան իշխանն Մոկաց ի Յովհանայ Անձեւացւոյ, զոր նախատած էր նա երբեմն, կոչելով զնա կով, արժանի կրելոյ զանուր.—«Ոմն յԱնձեւացի նախարարացն, սեպուհ մի որում անուն էր Յոհան, և միւս ևս Երուանդունի, Ներսեհ անուն, միաբանեալ ի խնդիր բարի ցանկութեան, ընդ որս և հաւանեալ և այլ արք ճշմարտութեան նուիրիչք՝ գնային խառնել ի գունդն զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի։ Եւ մինչդեռ ժողովեալ գնային ի ճանապարհի, մերձեալք ի քաղաքագիւղն որ կոչի Առեստ, ի ժամանակի քառասնորդացն պահոց, ի մեծին շաբաթու զատկին՝ յանկարծակի յանզգաստից ե-

կեալ հաւանէին ի վերայ Նոցա իշխանն Անձևացեաց Սևուկ անուն, և իշխանն Մոկաց Ցոհան անուն բազում այրուձիով, ընդ առաւօտուն ծագել։ Եւ սոցա զգացեալ՝ կէսքն զինեալք և կէսքն թէպէտ անպատրաստք էին՝ հարկանէին ի դիմի աներկիւղաբար. և նախ Ներսեհ Երուանդունի յարձակէր ի վերայ իշխանին Մոկաց Ցովհանայ, և հարեալ նիզակաւ, օգնելով Նմա և Անձևացւոց սեպհին Ցովհանայ, յերկիր կործանէին։ Որոյ ասացեալ էր երբեմն հպարտաբար պարծելով զԱնձևացի սեպհէն Ցոհանայ, թէ Նմա որպէս կովու՝ բայց թէ անուր ևեթ պիտի արկանել. այլ Նա ումպիտոյ է յայլ իրս յօգուտ կամ ի վնաս։ Եւ լուեալ պատասխանի յազգակցէն Ցոհանայ, յիշխանէն Անձևացեաց Սևկոյ, թէ Ջանուրն ես բերեմ, բայց արկցիր դու ի պարանոցն։ Որ յաղագս ամբարտաւանութեան բանիցն հարեալ կովուն եղջերբն չարաչար՝ ընկեաց յերկիր յերիվարէն և կոխեաց։ Եւ զայն տեսեալ զօրացն բազմութեան՝ ի փախուստ դառնային. զորոց զհետ եղեալ՝ զոմանս սպանանէին և զմնացեալսն փախստականս արարեալ ցրուէին այսր և անդր» (Անդ)։

**20.** Առաջին կռիւն, որ ոչ այնչափ պատերազմ էր որչափ փոքր խառնուրդ՝ չէր բաւական վհատեցունել զՊարսիկս, որ պիտի գային անշուշտ մեծագոյն զօրութեամբ, և արդարև եղաւ այնպէս։ Ի սկզբան գարնան լսեցին Հայք, թէ զօրք մեծ հասած էր ի Հեր և ի Զարևանդ գաւառ ընդ հրամանատարութեամբ Ատրներսեհի, որ փուշտիպան·ց (թիկնապահաց) գնդի սաղար էր, և որուն օգնական էին այլ նշանաւոր Պարսիկք և Գդիհոն Սիւնեաց տէր։ Պատրաստեցաւ Վահան և եկաւ հանդերձ կաթողիկոսիւ որ էր Ցոհան Մանդակունի՝ յԱրտազ և բանակեցաւ մօտ ի գիւղն Ներսեհապատ։ Վահան կը կազմէ զճակատն ըստ օրինի, պատերազմը կ'սկսի։ Հայք կը տկարանան ի սկզբան, յետոյ կը զօրանան քաջութեամբ Վահանայ և երկուց Կամսարականաց. Պարսից զօրավարներէն երկուքը կ'սպանուին, և այս նուազ ևս յաղթութիւնն լինի Հայոց.— «Եւ անցուցեալ զաւուրս դառնաշունչ ձմերայնոյ ցրտոյն՝ հասանէին գարնանային ժամանակի օդոյն բարեխառնութեան. լսէին թէ զօր բազում խաղացեալ գայ ի Պարսից, եկեալ հասեալ են ի սահմանս Հերայ և Զարաւանդ գաւառի բազում զօրագլուխք, որք էին այսոքիկ. Սուրէն Պահլաւ, Ատրներսեհ փուշտիպանացն սաղար, և Վին Խոռեան և Ատրվշնասպ Իտապեան և Գդիհոն Սիւնեաց տէր. և ի սոսա թէպէտ և ըստ գահոյից էր ոք ի վեր՝ այլ հրամանատու և աւագ զօրուն՝ փուշտիպան սաղար էր։ Փութացաւ և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, առեալ ընդ իւր և զսուրբ հայրապետն Հայոց զտէր Ցոհան, յուսալով յաղօթս առնն, և գումարեալ

զզօրսն ճեպէր հարկանել ի դիմի, և անդէն զայն տեղեօք. թերևս ոչ լիցի, ասէր, անցանել բազմութեան Պարսից ի միջոց կողմն աշխարհիս Հայոց։ Եւ առեալ ընդ իւր զնախարարսն և զազատ և զայլ ամենայն ռամիկն, որ կամաւոր խնդութեամբ երթային ի գործ պատերազմին, և չուեալք ի Դունայ զօրքն Հայոց՝ երթեալ հասանէին ի գաւառն յԱրտազ, և մօտեալք ի գունդն Պարսից՝ բանակէին ի գիւղ մի որում անուն էր Ներսեհապատ։... Եւ այնպէս զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, սքանչելի տպետաւն Սահակաւ մարզպանաւ... հասեալ ի լոյս առաւօտուն՝ սուրբ կաթողիկոսն Հայոց Յոհան օրհնէր զամենեսեան։... Սկսանէր այնուհետև զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան յօրինել ըստ պատշաճի զիւրաքանչիւր կողմն ճակատուն։ Զմիջոց կողմն բազում այրուձիովն տայր ի ձեռն լաւ առն Սահակայ մարզպանին ասպետի. և ի կողման աջոյ թևին կարգէր զԲաշխ Վահևունի և զԲաբգէն Սիւնի և զԱտովմն Գնունի և զՓափակն Պալունի, իւրաքանչիւր այրուձիով և այլ ևս յաւելուածով. և յահեկէ կողմանէ հանդերձ ուխտասէր Կամսարականաւն և իւր սիրելի եղբարբքն Վահանաւ (իմա՝ Վասակաւ), Ներսեհիւ և Հրահատաւ. և ընդ աջմէ իւրաքանչիւր այրուձիով գնդացն կազմէր զինքն։ Կազմէր և զայլ արս աւագս ընտիրս այրուձիով հանդերձ և Վրենաւ Վանանդացւով, առ որս և առաքէր զՊապ Արտակունեաց, զայր ոստանիկ, զորդի Բաբոցի, ասել ցիւրաքանչիւր աւագս, թէ Զնշանս հզօրագոյն արանց զոր յառաջագոյն տեղեակ եմք, զարանցն Պարսկաց և զԿատշաց և զգնդին Սիւնեաց՝ տեսանեմ զի դէպ ի մեզ դիմեալ գան. արդ դուք մեղմով երթայք, և ուշադրեալ հայեցարուք ի մեզ. թող մեզ նախ լինի յարձակել, և եթէ մեք զմեր կողմն շարժեալ փախուցանեմք՝ ապա այլ կողմանքն՝ մեր և ձեր առաջի ոչ կարեն կալ։ Եւ Պապայ տարեալ զպատգամն սպարապետին Հայոց Վահանայ առ իւրաքանչիւր աւագս կողմանցն, թէպէտև կամէին ըստ հրամանի զօրավարին առնել, այլ ստիպով հասեալ գունդն Պարսից յիւրաքանչիւր թև կողմանցն՝ ոչ տային պարապել, այլ դիրդեալ զկողմն աջոյ, ուր Բաշխն Վահևունի էր՝ փախուցանէին։ Եւ տէր Սահակ ասպետ յարձակեալ նիզակաւ ի վերայ փուշտիպանացն սաղարի՝ վրիպեցին ի միմեանց զնիզակսն երկոքեան. և մօտեալ առ միմեանս երիվարացն՝ բուռն հարեալ զմիմեանց հերաց և կռուէին։ Եւ տեսեալ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, թէ աղմկեցան զօրքն Հայոց և տկարացան առաջի թշնամեաց՝ ձայն արարեալ առ Վրէն Վանանդացի՝ Յառաջեա, ասէ, ի վերայ թշնամեացն, և ձեռն ի գործ արա պատերազմել. և նորա զարհուրեալ ասաց, եթէ Ոչ եմ

կարող, լիս ինչ ապաստան յայսմ ժամու դու մի լինիր։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ զօրացեալ սրտիւ, հանդերձ Կամսարականօքն երկոքումբք, յարձակէին ի վերայ հասելոց սոցա թշնամեացն. և ոչինչ բնաւ տուեալ կալ առաջի, այլ շարժեալ սաստկապէս զկողմըն իւրեանց ի փախուստ դարձուցանէին. և առեալ զթեւն զայն արկանէին զմիւս ևս թեւովն զմիջոցի կողմանն. և արկեալ առաջի զկողմանցն երկոցունց զգունդսն՝ անթիւ բազմութիւն տրանց քաջաց ի փոքր լանջակողմանն դիաթաւալ յերկիր կործանէին, և սաստիկ արեանց հանէին ճապաղիս։ Բայց միայն Վինն Խոռեան երկու այլ նիզակակցօք զօրու դարձեալ ընդդէմ խիզախէր. զոր անդէն առ նմին քաջ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան սատակէր հզօրեղապէս. և զԱտրվշնասպն Տայեան՝ տէրն Շիրակայ Ներսեհն Կամսարական, և այլքն ամենեքեան իւրաքանչիւր զբազում արս քաջս ընկեցեալ յերկիր կործանէին։ Եւ հայեցեալ յայն գունդն Բարշղի և այլ փախստէիցն Հայոց, և տեսեալ թէ բեկաւ ոյժ զօրու գնդին Պարսից և երթան փախստական առաջի գնդին զօրավարին Հայոց Վահանայ՝ ոգի առեալ զօրանային. և դարձեալք անդրէն և զկնի հալածչացն եղեալք՝ զբազումս սպանանէին, և զբազումս արկեալ առաջի՝ հալածականս առնէին։ Եւ լինէր առաւելագոյն թիւ կոտորելոցն ի գնդէն Պարսից, քան թէ զերծելոցն փախստէից։... Եւ դարձաւ գունդն Հայոց բարի անուամբ և բազում փառօք, լաւ ուարաւ և սաստիկ ընչիւք առ պատուական կաթողիկոսն Հայոց Յոհան ի բանակն» (Փարպ. ՀԱ.)։

Փարպեցին այս պատերազմին մէջ ևս չյիշեր յանուանէ Հայոց կողմէն մեռած. սակայն Հայոց վայր մի տկարանալը և փախուստը յիշելէն յայտնի է, թէ ոչ սակաւ կորուստ ունեցան նաև Հայք, ևս և մեծամեծներէն, քանզի պատերազմին մէջ յիշուած երևելիներէն ոմանք այլ ևս չեն յիշուիր ի պատմութեան։

**21.** Փարպեցին կը պատմէ հոս դէպ մի անակընկալ, այն է Վահանայ կրտսեր եղբօր Վարդայ, որ արգելեալ էր ի դրան Պարսից՝ արձակուելով գալը։ Ըստ բարեպաշտ հաւատոյ Փարպեցւոյն՝ սքանչելեօք եղաւ Վարդայ ազատութիւնն, բայց թէ ինչպէս՝ չյիշեր. միայն կ'ընծայէ Աստուծոյ սքանչելագործ ձեռին, որ ցօղ դարձուց Բաբելոնի հնոցին բոցերը, Կարմիր ծովուն և Յորդանանու ջուրերն յետս ընկրկեց և զՊետրոս արձակեց բանտէն դրօքն փակելովք։ Փարպեցին կը համարի զայն ազատութիւն նաև իբրև կատարումն ուխտին Վահանայ, որ իբրև փոխարէն իւր դարձին՝ կ'սպասէր տեսնել զիւր սիրելի եղբայրն Վարդ, ինչպէս արդէն յիշուեցաւ, նաև իբրև. լրումն փափաքանաց միւս եղբօրն, Վասակայ, որ

մարգարէական ոգւով տեսանելով զիւր մօտաւոր պսակումն՝ ունեցած էր նոյն փափաքը տեսանելոյ զիւր կրտսեր եղբայրն։ Չէ առանց գովութեան բարեպաշտութիւն Փարպեցւոյն, որ կ'ընծայէ աստուածային խնամոց զազատութիւնն Վարդայ. այլ ըստ մեզ լաւագոյն ևս առնէր՝ եթէ պատմէր, թէ երբ և ինչպէս անկաւ Վարդ Պարսից դուռը, և ինչ ճանապարհաւ եղաւ ազատութիւն նորա, որ ունէր անտարակոյս բնական պատճառ.—«Եւ մինչդեռ զօրացեալք ցնծալից սրտիւք գային ՚ի գործոյ պատերազմին՝... երկրորդ ուրախութիւն մեծ և լուր յանկարծակի աւետեաց տարածեալ քարոզէր ընդ ամենայն բանակն Հայոց, թէ եկն Վարդ ողջ զերծեալ ՚ի կապանացն, եղբայր Վահանայ Մամիկոնենի։ Եւ լցեալ այսպիսի աւետաւոր համբաւով ընդհանուր աշխարհս Հայոց՝ գրոհ տուեալ փութայր ամենայն ոք, յորոց բազումք առ խնդին իբրև տեսանէին զանհաւատալի տեսիլն՝ յերկուացեալք՝ կերպարան և ոչ ճշմարտութիւն զիրսն կարծէին. բայց յիշելով զԱստուծոյ զօրութեանն զանընդդիմակաց սքանչելիս՝ փառս մատուցանէին ամենահնարին, որոյ հրամանի ամենայն դժուարինք և անհնարինք դիւրին են և հնարաւորք։ Յիշելով զցօղադարձութիւն հնոցին ՚ի Բաբելոնի, և զսառնաշէն պարիսպն եգիպտական Կարմիր ծովուն, զդառնալն ընդ կրունկն Յորդանանու, և զանկմունս Երիքովի պարսպացն՝ աղաղակաւ... որ առաւելագոյնս քան առ սուրբ առաքեալն Պետրոս արար զզօրութիւնսն։ Վասն զի զնա անձամբ միայն հանեալ հրեշտակին՝ արձակեաց զերծանել յաճումն քարոզութեան կենաց. իսկ զայրն Մամիկոնեան զՎարդ ոչ միայն լոկ անձամբ, այլ և ծառայիւք, դրամբ և կազմածով յամուր տեղեաց շահաստանին և ՚ի բարձրաբերձ պարսպացն և յասպարափակ բազմութենէ պահապանացն ընկալեալ իբրև զարծուի ՚ի թևս իւր և ընդ բազում անցուցեալ օթևանս՝ ածեալ հասուցանէր խաղաղութեամբ յերկիրս Հայոց։ Յայնժամ ծանուցեալ յիշէին ուխտակիցք, արք աստուածասէրք զերդումն Մամիկոնէին Վահանայ—զընդունելութիւն Աստուծոյ դարձին նորա և վկայութեան և հաւատոց—զոր ասաց յաւուր միաբանութեան առաջի սրբոյ Աւետարանին. «Թէ արդարև, ասէ, ծանուցեալ Աստուծոյ զբազմաժամանակեայ զթախանձ և զփղձկումըն սրտի իմոյ, զոր հառաչէի յոգւոց հանելով ՚ի մոլորութեանն, և ընկալաւ զպտուղ շրթանց խոստովանութեան իմոյ, և հաճոյ եղև ամենագիտին խորհուրդս իմ և ուխտ՝ ապա ըստ իւրում զօրեղ տէրութեանն արարեալ յիս նշան բարի՝ տացէ ինձ մերձ ընդ մերձ տեսանել զեղբայր իմ զՎարդ։... Իսկ յետ աւուրց ինչ բազմաց անցելոց տեսեալ հանճարեղ անձանց զպսակումն քաջ սեպհին Մամի-

կոնէից, զսրբոյն Վասակայ, զեղբօր զօրավարին Հայոց Վահանայ՝ անդէն և անդ ծանեան, թէ վասն զի մերձ ուրեմն էր կատարումն սրբոյն. որ և խնդրեաց յԱստուծոյ սուրբն Վասակ տեսանել ի մարմնի զերկս անձկալի եղբօրն իւրոյ Վարդայ, և ամենահզօրն Աստուած եղև փութով կատարիչ խնդրոյ սրբոյն իւրոյ, վաղվաղակի և ճեպով ընկալեալ զխնդիրն, և ածեալ զեղբայրն զՎարդ և ցուցեալ նմա և ամենեցուն» (Փարպ. ՀԲ, ՀԳ.)։

**22.** Ցետ մեծի ճակատուն որ ի Ներսեհապատ՝ Վահան իւրովքն եկած էր ի Տաղկէոտն, ինչպէս կը թուի՝ Հայոց բանակատեղին, ժամանակ մի հանգչել, մինչ եկաւ դեսպան ի Վախթանգայ, թէ գունդ մեծ Պարսից եկած էր ընդ զօրավարութեամբ ուրումն Միհրանայ, և ինքն չլինելով կարող զդէմ ունել միայն՝ կ՚սպասէր օգնութեան Հայոց Վրաց սահմանին մօտ, և յոյս կուտար, թէ նաև Հոնք պիտի գային յօգնութիւն։ Վահանեանք, զի երդուեալ էին Աւետարանաւ՝ կ՚երթան ի Վիրս ի թիկունս Վախթանգայ, և խաբուելով ի Վրաց՝ կ՚ստիպուին տալ ճակատ։ Այս եղաւ Վահանեանց երրորդ պատերազմն, զոր երկար կը նկարագրէ Փարպեցին և որ այնպէս աղետալի եղաւ Հայոց. քանզի ոչ միայն բեկան Հայք, թէպէտ պատերազմեցան մեծ քաջութեամբ, այլ և անկան, ի մէջ այլ նշանաւորաց, Վասակ Մամիկոնեան, եղբայր Վահանայ, և Սահակ ասպետ, և բանուեցան գերի Հրահատ Կամսարական և սեպուհ մի սիւնի Ցազդ անուն.—«Գային հասանէին (Վահան և իւրքն) ի Տաղկէոտն. և կամեցեալք առ վայր մի հանգչել ի ջերմկին որ կոչի Վարշակի՝ գայր հասանէր դեսպան ի թագաւորէն Վրաց Վախթանգայ, թէ գունդ սաստիկ եհաս յերկիրս Վրաց, և իմ տեսեալ, թէ ոչ եմ կարող կալ առաջի, խոյս տուեալ ի լերինս Հայոց, մօտ ի սահմանակցութեանն Վրաց՝ մնամ ձեզ։ Եւ նամակ ունէր գրեալ ի Վախթանգայ, թէ Հոն գնդի հրաման եառ գալ, և չև ևս հասին, բայց մինչ դուք գայք՝ հասանեն, և այնուհետև դուք և մեք և Հոնք զնոսա կորուսանեմք։ Բայց թուի ինձ, թէ յորժամ Հոն հասանէ՝ մեզ բնաւ և աշխատել ինչ ոչ հասանէ, նոքա իսկ վճարեն զգործն, զի անչափ բազմութեան հրաման եառ գալ։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և ամենայն աւագ տանուտերաց և սեպհացն Հայոց, վասն զի երդումն էր Աւետարանաւ և Խաչիւ ընդ թագաւորին Վրաց Վախտանգայ՝ յաւրուցեալ վաղվաղակի և անյապաղ ամենայն զօրքն Հայոց առ արքայն Վրաց հասանէին, և բանակեալք առ վայր մի ի գաւառին Կանգարաց դադարէին։ Ուր պատրողական բանիւք խաբէութեան թարթափեցուցանէր թագաւորն Վրաց Վախթանգ զմիտս զօրավա-

րին Վահանայ Մամիկոնենի և զայլ աւագ տանուտերացն Հայոց, մերթ ասելով, թէ Միհրանայ զձեր եկդ լուեալ՝ խոյս ետ ի սահմանաց Վրաց և յԱղուանս փախեաւ առ երկիւղի. և դարձեալ՝ թէ զերկու աւուրս՝ և գունդք Հոնաց հասանեն. և անցեալ երկու աւուրք ժամադիր խաբէութեանն՝ ապա յերրորդ և ի չորրորդ օր ձգէր, և յետ այնորիկ յայլ ի վեց և յեւթն օր։ Դարձեալ լրտեսս տայր արձակել արս ի գնդէն Վրաց և Հայոց, որք իջեալ ի տեղիս ինչ դաշտացն՝ տայր երևեցուցանել լոյս կրակաց բազմաց և կոճեղս ծառոց զինեալս այլանմանս, ըստ խաբէութեան Մակեդոնացւոյն Աղեքսանդրի։ Դարձեալ ասէր. Ոչ գայ գունդն Հոնաց առ մեզ ի լերինսս, այլ ասեն թէ աստ ի դաշտիս ած ցոյց մեզ զՀայս, և ամենայն բանից քոց հաւատամք, զոր քո խօսեալ է ընդ մեզ և երդուեալ. և այնուհետև զոր ինչ և հրամայես առնել մեզ՝ զամենայն կատարեմք. ապա թէ ոչ՝ չհաւատամք թէ Հայք ընդ քեզ միաբան են. բայց թէ արդարև զայս տեսանեմք՝ այնուհետև զՊարսիկս ի մեզ թողէք, և ձեզ փոյթ մի լիցի։ Արդ թէ դուք ի դաշտին չիջանէք, և հոն գունդքն, վասն ինձ չհաւատալոյ, ի վեր յաշխարհէն ուրեք չշարժին, և Միհրան դառնայ և զՎիրս աւերէ, ինձ ձեր եկն զինչ օգուտ է։ Եւ Հայոց գունդն, վասն զի ուխտադիր էր ընդ թագաւորին Վրաց՝ զոր ինչ ասէր ստոյգ կամ սուտ՝ ջանային վասն Աւետարանին երկիւղի զամենայն կատարել։ Զի թէպէտև աօթ էր ժամանակն՝ հարկաւորեցան իջանել ի դաշտն Ճարմանայնու. և յիշխանացն Հայոց ոմանք ոչ յաջող համարէին զէջս գնդին Հայոց ՚ի Վիրս. զոր թէպէտև բազում անգամ ասացին՝ չհաւատացեալ լռեցին։ Եւ իջեալ գունդն Հայոց ի Վիրս, չև ևս անցեալ աւուրց երից կամ չորից՝ գայր հասանէր Միհրան և բանակէր դէմ յանդիման բանակին Հայոց յայնկոյս գետոյն զոր Կուր գետն անուանեն, և բանակն Հայոց չուեալ յայլ տեղի հեռագոյն ի բանակէն Պարսից՝ առնէին զիւրեանց օթևանին տեղին։ Եւ բազմաց ի գնդէն Հայոց ի գիշերին յայնմիկ մոռացեալ զերկիւղ ուխտին Աստուծոյ, և զահաւոր երդումն Աւետարանին առ ոտն հարեալ՝ պատգամագնացութեամբ գաղտ խօսեցան ընդ զօրսն Պարսից։... Եւ հասեալ ի վաղիւն ի տեղի պատերազմին՝ խօսէր յայնժամ արքայն Վրաց ընդ զօրավարին Հայոց Վահանայ և ընդ այլ աւագ տանուտեարս և ընդ սեպուհս Հայոց և ասէ. Լաւ թէ մեզ կռուել այսօր ընդ զօրս Պարսից, քանզի մեք իսկ բաւական եմք սոցա, և չկարեն կալ առաջի. բայց թէ այսօր ևս հեղգացեալ էր մեր՝ գալոց էին Հոնք և զանուն յաղթութեանն և զօգուտ աւարիս նոքա տանելոց էին։ Եւ մինչև ցայնժամ ևս յերկարեալ խա-

քէր պատիր բանիւք։ Ապա օրամտեալ ընդ սուտ և անպիտան խօսս արքային Վրաց զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, ծանուցեալ և զխուլութիւն գնդին Հայոց, զոր տեսանէր լքեալս և մեղկեալս և ոչինչ բնաւ նմանս այլոց ժամանակաց փութոյն և յօժարութեան, սակայն զգունդն զօրաց կազմէր Մամիկոնեանն Վահան ըստ օրինի ճակատու պատրաստութեան. և տուեալ զկողմն աջոյ Բարշլի Վահևունւոյ և Սատոնի Գաբեղինի, և զկողմն ահեակ տայր Վախտանգայ արքային Վրաց, և ի միջոյ կողման կազմէր զինքն երկոքումբք արամբքն, որդւովք երանելոյն Արշաւրայ, և երանելեաւ տերամբն Գնունեաց, և զերանելի ասպետն Սահակ և զՍիւնին Բաբգէն ընդ մէջ իւր և Բարշլի կացուցանէր։... Եւ յարձակեալք ի վերայ միմեանց Հայք և Պարսիկք, թէպէտև զօրավարն Հայոց Վահան երիւք Կամսարական եղբարբք հարեալ ի դիմի իւրոյ թշնամւոյն կողմանն, դիր և տար արարեալ դարձուցանէին ի փախուստ, մինչև տարեալ անցուցանէին զբազումս ի զօրացն Պարսից յայնկոյս Կուրն գետոյ, և զբազումս ի զօրացն Պարսից յերևելի արանց զօրուն կոտորէին քաջաբար։ Անդ քաջի սեպհին Մամիկոնէից Վասակայ հարեալ նիզակաւ ուժեղապէս զայր ոմն հզօր ի գնդէն Պարսից յերկիր կործանէր. որոյ և բեկանէր նիզակն. և ելեալ ի խնդիր այլում նիզակի և գտեալ՝ դառնայր անդրէն փութանակի։ Եւ պատահեալ նմա Կամսարականին Ներսեհի տեառն Շիրակայ, որոյ և նորա բեկեալ նիզակն՝ ի խնդիր էր այլում նիզակի. և քաջի Մամիկոնենին Վասակայ ձայն ի վերայ եդեալ տայր. Փութա, Ներսեհ, գտանել նիզակ, և դարձիր եկ արագ... գուցէ վրիպեալ յանուանէ և ի փառաւորեալ կատարմանէս՝ անանուն և անպիտան մահուամբ ելանիցեմք յաշխարհէս։ Եւ զայս լուր ի սըրբոյ առնէն Վասակայ Մամիկոնենէ հաւաստի երդմամբ պատմէր մեզ բազում անգամ ինքն տէրն Շիրակայ Ներսեհ Կամսարականն։ Եւ մինչդեռ զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան այսպէս մըրցէր հանդերձ երանելի եղբարբն Վասակաւ և երկոքումբք որդւովքն Կամսարականին Արշաւրայ՝ յանկարծակի փախուցեալք առ հասարակ սրանալին գունդքն ամենայն Հայոց և Վրաց. որոց բազումք ի նենգաւորացն աղաղակէին առ միմեանս անհանգիստ, թէ Փախեան Հայք, անձնապուրք լերուք։... Քաջի զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և այլոց ընդ նմա ուխտապահ ընկերացն, որ ախորժելով տենչային բաժակին մարտիրոսութեան և չգտան արժանիք՝ դարձուցեալ այնուհետև զերասանակս երիվարացն գնային և նոքա զհետ փախստէիցն Հայոց։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի եկեալ պատահէր Բաբգենայ Սիւնւոյ, անկելոյ ի

զօրացն Պարսից կարեվէր, զոր հեծուցեալ ի վերայ իւրոյ նժուգի և հանեալ ի պատերազմէն ապրեցուցանէր։ Բայց որք ընտրութեանն ցանկացողք էին և եղեն արժանիք ընդ սրբոյ ապետին Սահակայ և ընդ սրբոյ քաջին Վասակայ Մամիկոնենի, կատարեցան յաւուրն։ Իսկ զօրքն ամենայն Հայոց, ընդ որս և անպիտան զօրքն Վրաց, հանդերձ Թագաւորաւն իւրեանց Վախթանգաւ՝ փախնեալք ցրուէին. զորոց զկնի հետամուտ եղեալ գունդքն Պարսից՝ զբազումս կոտորէին, և բազումք յայլևայլ տեղիս զերծեալք ապրէին։ Բայց զՀրահատն Կամսարական, սաստկապէս վազս առեալ երիվարին իւրոյ ընկենոյր, և հասեալ Պարսկացն մինչդեռ էր նա հետիոտս՝ կալեալ ածէին առ Միհրան, զոր տեսեալ Միհրանայ մեծապէս ուրախացաւ։ Պատուհասէր զնա բանիւք խստութեան, և կապեալ տայր պահել զգուշութեամբ, և ուր երթայր յաշխարհէս Հայոց՝ ընդ իւր շրջեցուցանէր։ Ընդ որս կալան և սեպուհ մի սիւնի որում անուն էր Ցազդ, և զայլս ոմանս ի Վրաց աշխարհէն» (Փարպ. ՀԳ, ՀԴ.)։

**23.** Յետ ձախող ճակատուն ի Վիրս՝ Վահան երկու Կամսարականօք առանձնացաւ ի կողմանս Տայոց, ուր ժողովեցան ոմանք ի Նախարարաց և ի փախստէից. եկաւ զհետ նոցա և Միհրան իւրով գնդաւ. բայց այնպէս զարհուրեալ էր, մինչև չհամարձակել յարձակել, թէպէտ երկու կողմանք շատ մօտ էին իրարու։ Պարսից բանակն էր ի Դու, գիւղ ի վերայ սահմանին Պարսից և Յունաց, և Վահան իբրև երկու հրասախօք հեռի ի նմանէ ի գեղն Մկնառինճ, ոչ աւելի քան հարիւր մարդով.—«Իսկ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան երթայր առ վայր մի յամրագոյն տեղիսն Տայոց, ուր և սինլքորք փախստէիցն Հայոց առ նա ժողովէին, և այլք ի Նախարարացն Հայոց. այլ Կամսարականքն երկոքեան ընդ նմա իսկ էին միշտ, և անքակ ի նմանէ և միաբան։ Զորոց զհետ եկեալ Միհրան գնդաւն իւրով՝ ջանայր կամ սպանանել պատերազմաւ, և կամ ունել հնարիւք, և կամ հաւանեցուցանել և նուաճել։ Եւ էր բանակ սաստկութեան զօրուն Արեաց ի գեւղն որ անուանի Դու, ի սահմանակցութեան Պարսից և Հոռոմոց, և զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան մերձ ի նա իբրև երկու հրասախօք, ի գիւղ մի որ կոչի Մկնառինճ, արամբք որպէս թէ հարիւրովք, և թերևս սակաւուք և կամ յոլովիւք։ Եւ Միհրան այնչափ հազարօք առ նա բանակեալ էր մօտ, և տեղին ուր զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան էր՝ յիշխանութեանն Պարսից Թագաւորին էր. և այնչափ սաստկապէս զեղեալ էր Աստուծոյ զմեծ շնորհ զօրութեան իւրոյ ի վերայ քաջի առն Վահանայ Մամիկոնէի, զի ի մէջ այնչափ բազմութեան գնդի և ի զօրաւոր քաջորերոյ՝ դողացեալ սարսեալ կայր Միհրան

*գնդաւն, և չիշխէր դիմել ի վերայ և սպանանել զոր կամէր, և հալածել և կորուսանել զմնացեալ փախստեայսն» (Փարպ. ՀԵ.)։*

*Միհրան, ըստ Փարպեցւոյն, կը խօսի պատգամաւորութեամբ ընդ Վահանայ, որ ազդու բանիւք կը գանգատի զՊարսից և առանձինն զՊերոզէ, թէ ինչպէս չգիտնալով ընտրել զլաւն ի վատթարէ՝ ապականեցին երկիրը։ Վահան կը խօսի նաև համառօտիւ զանձնէ և կ'արդարացունէ զապստամբութիւն իւր, խրատելով զՄիհրան հաւանեցուցանել զՊերոզ իւր ազդեցութեամբ՝ արդարութեամբ դարման տանել եղած վնասուն։ Վահանայ այս բանագնացութիւնն, որոյ հիմն պատմական է և կարևոր յոյժ, և զոր Փարպեցին իբրև ի բերանոյ Վահանայ կը բերէ ի մէջ ընտանի լեզուաւ ժամանակին՝ կը դնենք հոս բան առ բան։ Չէ անհաւանական թէ բանագնացութիւնն թէ ըստ իմաստին և թէ ըստ լեզուին էր բուն Վահանայ, որ հաղորդեց զօրինակն պատմչին իւրում։ «Բանիւ աղօքանաց պատգամաւորէր ընդ նմա (ընդ Վահանայ Միհրան) հանապազօր ի խաղաղութիւն, ասելով թէ Մի երկնչիր, և յարքայից արքայի ի ծառայութենէ մի ելաներ, և զաշխարհս Հայոց մի տար ի վատնումն. ի հնազանդութիւն եկ Թագաւորին, և ես միջնորդ լինիմ. քանզի վասն իւրոյ բարերարութեան սիրէ զքես, և բանից իմոց լսէ. և ես աղաչեմ զԹագաւորն և հաշտեցուցանեմ ընդ քեզ, և ինչ որ արժան է տալ քեզ՝ ջանամ զի տայ։ Եւ սպարապետին Հայոց Վահանայ Մամիկոնէի պատասխանի արարեալ ասէր ցՄիհրան, եթէ Արեաց տէր որ լինի՝ արդար աչօք պիտի նայել յամենայն մարդ իբրև զԹագաւոր, և արդարապէս տեսանել և արդարապէս լսել ըստ արժանի Թագաւորի։ Բայց այր Թագաւոր, որ ուղիղ աչօք չհայի ի ծառայս, և ուղիղ լսողութեամբ չլսէ ուրուք զբանս, այլ համակ ըստ իշխանութեան վարի և ոչ ըստ արժանի իրաւանց քննութեանն. այլ առաւել ևս, որ կարի դժնդակագոյն է և աշխարհի կորստեան պատճառ, կամի տեսանել այլոյ աչօք և լսել այլոյ ականջօք՝ ծանր է ծառայութիւնն այն և դառն, և վտանգ՝ որում ոչ ոք կարէ կալ առաջի։ Վասն զի տէր, որ յիւր ի ծառայից զլաւ և զվատթար չգիտէ ընտրել, և ըստ արժանի իւրաքանչիւր ումեք մատակարարել. զպէտոյսն ոչ կամի՝ այնպիսին լաւ ծառայի տէր դժուարաւ կարէ լինել։ Արդ՝ Հայոց աշխարհս որպիսի՛ մեծ և պիտոյի աշխարհ է. և արդ ցոյց ինձ այր մի յայսպիսի աշխարհի, որ արժանաւորապէս եհաս ի տանուտէրութիւն. այլ որեար աւագակ և անպիտան, հացկատակք և վատտոհմիկք, որ զայնպիսի մեծ Թագաւորութիւն խաբեն և ընդ կրակի փառս գնեն և տէրութիւն, և ի ձէնջ ըստ կողմն ելեալ սակաւ մի՝ միզեն ի կրակն, և յանթեղ զաղբ իւ-*

քեանց արկանեն, և՛ զվաճառականն, և՛ զվաճառն ի միասին Թըշնամանեն։ Եւ այլ լաւութիւն, և քաջութիւն, և միտք, և գիտութիւն, որով աշխարհ շինի և միջի լինի՝ այն չխնդրի և արհամարհեալ է. այլ անպիտան և վատտոհմակ մարդկան պատրողութիւնն ի մէջ անցեալ յարգի, և դուք առ ճանաչող ունիք զձեզ։ Լուեալ է քո, որ Միհրանդ ես, և ամենայն Պարսից զբանս զայս յԱրեաց տեառնէն ի Պերոզէ առաջի ամենեցունց յատենի, թէ Այր վատ և գունդ անպիտան Ասորի է, բայց քան զԱսորի այր՝ Հայ մարդ շատ վատթար է և անպիտան։ Եւ ո՞չ արդեօք լաւ էր մահ քան զայն լուր յայնպիսի Թագաւորէ։ Եւ արդ իմ երկուս կռիւս արարեալ է ընդ Արի մարդկան, և երրորդն այս է որ ընդ քեզ արարաք, և ընդ որս զերկուս կռիւսն արարաք՝ ընդ այնպիսի երևելի և քաջ մարդկան կռուեցաք, զոր ինքն Արեաց տէրն և ամենայն Արիք ճանաչէին թէ որպիսի՛ որեար էին։ Եւ օտար մարդոց մեզ չէր օգնեալ, Հոնի կամ Հոռոմի և այլ ազգի ուստեք մարդոյ, բայց միայն այս Հայոց զոր դուք գիտէք՝ սոցա վճարեալ է զայնպիսի մեծ գործ, զոր դուք ամենայն Արիք լուայք և տեսէք. և ոչ բազում այրուձիոյ, այլ հարիւր արամբ և կամ ևս նուազիւ զհազար և զերկուս հազարս այր փախուցեալ է սոքօք։ Եւ յայսմ կռուի մի՛ զայս զմտաւ ածեալ պարծիս, թէ աւելի ինչ քաջութեամբ յաղթեցէք մեզ, այլ ի մեր երկպառակութենէ և ի նենգելոյ եղև մեզ վնաս։ Զի թէ էր այս Հայ գունդ, յորոյ վերայ ահ և երկիւղ էր, որպէս Արեաց տեառն յիւր ծառայի վերայ, և յիմում ձեռին այսպէս էին որպէս ընդ իմ նախնեացն ձեռամբ, և համարձակապէս իշխէի զվատացեալս ի կռուի տամբ և կենօք հարցանել և գլխով պատիժ առնել, և քաջացելոցն կարէի բարի առնել և պատիւ տալ՝ ցուցանէի Արեաց տեառն և ձեզ ամենեցուն, ո՛ր կարի գունդ յԱրիս անուանի էր և լաւ. բայց եթէ ոչ լաւագոյնք ևս և քաջք երևէին՝ այլ ի խոնարհ սակաւ մի և նուազ չտայի երևել։ Բայց արդ զոր ձեր ի վատ տոհմէ և յանպիտան ի մարդկանէ աշխարհիս Հայոց իշխան կարգեալ էք՝ դոքա ըստ իւրեանց յետնութեան կորուսին յաշխարհիս Հայոց զքաջութիւն և զանուն բարի և զլաւութիւն։ Զի գնդի, որոյ զօրագլուխն վատ է՝ գնդին լաւ լինել չէ հնար. և աշխարհի, որոյ իշխանքն յետին են՝ աշխարհին այնմ անհնար է յառաջադէմ և անուանի լինել։

«Իսկ յաղագս իմ դուք ամենքեան գիտէք, զի ի հարցն իմոց ես տղայ մնացի. ոչ զվաստակս նոցա որ առ Արեաց աշխարհն լեալ է՝ գիտեմ և ոչ յանցման նոցա հաղորդ ինչ էի։ Բայց մինչ ես յանձինս զգացի, և ձեզ Արեաց տեառնն արքանեկութեան ար-

ժանի եղէ՝ ի մտի եդի առաջի Աստուծոյ և մարդկան՝ արդար մտօք
տեառն և ձեզ ծառայութիւն առնել և արդար վաստակս վաստա-
կել։ Եւ որչափ ես զլաւն հոգայի և ի լաւ վաստակսն յաւելուլ՝ և
վատ անարժան իշխանքդ Հայոց զինչպէս բանսարկութիւնս առ-
նէին, և դուք ինքնին մտօք լսէիք, և ընդ իս չհայէիք ուղիղ․ ածի
զմտաւ, թէ զինչ արդեօք այլ հնար գոյր, որով ես կարող լինէի
զԱրեաց տեառն և զաւագացն զմիտսն ուղղել ընդ իս, և շատ էր
ինձ։ Եւ իբրև ի վաստակսն զոր վաստակէի, ըստ իմում գիտելոյ
թերութիւն ոչ տեսանէի, և առաւելս ինչ յաւելուլ և վաստակել
չգտանէի հնարս, և զթշնամեաց բերանս ի բանսարկութենէ խնուլ
ոչ կարէի, և տեառն և ձեր ականջք բաց էին ի լսել զստութիւն
և չխորհել վասն իմ ուղղակի, և իբրև ոչինչ գտի պատճառանս-
ծանր տրտմութեանն որ կրէր յանձին իմում ի սպառ, և փախչել
յաշխարհէս չկարէի՝—խորհուրդ չար ի մտի արկի, և անձամբ զանձն
սպանի․ և երանի՛ թէ լոկ զմարմինս էր սպանեալ, այլ և զհոգիս
և զմարմինս ի միասին կորուսի։ Քանզի ուրացայ զճշմարտութիւնն
զոր գիտէի, թէ ստոյգ Աստուած է արարիչ և տէր ամենայնի․ և
երկիր պագի ստութեան և մոլորութեան, զոր այսօր առաջի ձեր և
առաջի ամենայն աշխարհիս խոստովանիմ, թէ ստութիւն է և աղ-
տեղի խաբէութիւն։ Եւ յետ կործանման յորում կործանեցայ՝ մաշէի
յերկիւղի զամենայն օր, թէ գուցէ մեռանիցիմ սովին մեղօք և կո-
րնչիցիմ զյաւիտենական կորուստն։ Կալեալ ի բուռն զոգի իմ՝ ի բաց
մերժեցի զերկիւղ թագաւորաց, ընկեցեալ յանձնէ կախեցի զուրա-
ցութեանն խիղճ և լուսաւորեցայ։ Այսուհետև ուրախ եմ և պա-
տրաստ հալածանաց, աղքատութեան, վշտի և մահուան․ զի որում
և դիպիմ քրիստոնէութեամբ՝ ուրախ եմ և անահ։ Բայց դու զոր
խօսիդ՝ արդարև կարես առնել, և հաւանի թագաւորն․ բայց նախ
քան զամենայն զքրիստոնէութիւն շնորհէ աշխարհիս Հայոց, և
զաղ" եղի վաճառդ հատանէ յաշխարհէս մերմէ, զոր անպիտան և
վատ մարդիկ գնեն ի ձէնջ խաբէութեամբ, և ընկալեալ՝ ծաղր
առնեն զձեզ և զմոլորդ․ և զմարդ ճանաչէք զլաւն և զանպիտան,
և գործ խնդրէք յիւրաքանչիւր ումեքէ, ոչ կատակաբանութիւն, և
ի գործ հայիք տալ ըստ վաստակոց զհատուցումն, և ոչ ի լկտա-
բանութեան խաբէութիւն․ և կարէք գրել և կնքել, թէ ի մերմէ
բռնութենէ եղև ձեր յանցումնդ և ոչ ի ձեր ստահակելոյ և յան-
դգնութենէ, և թողուք․ և զտոհմիկն առ տոհմիկս ունիք, և զվատ-
տոհմակսն առ անտոհմակս։ Եւ թէ այդպէս նուաճէք զմեզ՝ մեր
բնիկ տեարք էք և հարցն մերոց և նախնեաց, և մեք ծառայու-
թիւն առնեմք և հպատակ լինիմք։ Ապա եթէ նոյնպէս զյետինսն առ

լաւսն ունիք և զլաւսն յետս տանիք, և աղտեղի մեղաց վաճառէք զիշխանութիւն աշխարհիս, և ոչ ըստ իրաւանց հայել յարժանաւորսն և ի պէտսնիսն տալք՝ մեք որ ապստամբեցաքն՝ ոչ եթէ գիտէաք եթէ մեք Արեաց առաջի ինչ կարեմք կալ, զի և՛ զմեր տառապանացս ոյժ գիտեմք, և՛ զԱրեաց այնպիսի մեծ և զանհամար գնդի և ուժոյ զսաստկութիւն. բայց միայն զմեռանելն եդաք առաջի, և նմին պատրաստ եմք. և առաւել ևս ուրախ եմք, զի զանուանի և զլաւ մահ մեռանիմք քրիստոնէութեամբ, քան թէ ուրացութեամբ գնել զանցաւոր փառս և զյաւիտենից կորուսան ժառանգել» (Փարպ. ՀԵ.)։

**24.** Մինչ Միհրան և Վահան կը խօսէին այսպէս պատգամաւորօք՝ դեսպան գալով կը կոչէ ի դուռն զՄիհրան, որ առնլով զՀրահատ և զՑողդ՝ կը մեկնի։ Հրահատ հնարիւք կը պրծնի ի ձեռաց Պարսից, և Ցողդ կ'սպանուի մօտ ի Բաղաւան։ Ահա պատմութիւն Փարպեցւոյն, արդարև հետաքրքրական. «Եւ մինչդեռ Միհրան և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան զայնպիսի բանս ընդ միմեանս խօսէին՝ յանկարծակի դեսպան հասանէր ի դրանէ և ստիպելով զՄիհրան ի դուռն կոչէին։ Եւ նորա չուեալ ամենայն բազմութեամբ ճեպով ի դուռն, առեալ ընդ իւր զկապեալն Հրահատ և զերանելին Ցաղդ և զայլ կապեալսն։ Զորոց զհետ երթայր տրտմութեամբ և բազում փութով սիրելի եղբայր նորուն, տէրն Շիրակայ Ներսեհ արամբքն ընտրելովք. որոց տեսեալ զանհնարին անսպառ ողբումն Ներսեհի, սիրով խանդաղատեալ՝ զքարիս նոցա յիշելով երթային ընդ նմա։ Յօրէ ունելոյ զՀրահատն Պարսկացն՝ ոչ էր եղբօր նորա Ներսեհի տեառն Շիրակայ դադարեալ ի լալոյ, և ոչ էր հանգուցեալ ի վերայ անկողնոյ, և ոչ ճաշակեալ հաց առանց տրտասուաց, այլ և զոր ճաշակէրն՝ առ չարի դառնացեալ լինէր բերան նորա։ Եւ երթայր զհետ գնդին Պարսկաց՝ ածելով զմտաւ, թէ ո՛ գիտէ լրտեսեալ ուրեք ի զատագոյն թևի գնդին՝ անկեալ ի վերայ կարասցէ զնա զերծուցանել. և կամ թէ ոչ՝ գոնեայ ես դիպեալ մահու հանդերձ յանմխիթար տրտմութենէս։ Եւ երթեալ բազում օթս զհետ և ոչինչ կարացեալ գտանել հնարս, և մերձեալք որպէս թէ օթևանաւ միով ի սուրբ տեղի տան նահատակին Գրիգորի... ձայն սաստիկ բարբառոյ հանդերձ արտասուօք արձակեալ առ այրն Աստուծոյ... մեծաձայն բարբառով և ողբալով աղաղակեաց Կամսարականն Ներսեհ առ այրն Աստուծոյ Գրիգորիոս... և նորա լուեալ վաղվաղակի ասաց ցՔրիստոս. և Փրկչին Աստուծոյ անդ և անդ հանեալ զկապեալն Հրահատ ի շրջափակ զգուշութենէ պահապանացն՝ արձակէր խաղաղութեամբ առ սիրելի եղբայրն իւր

և յաշխարհ։ Յայնժամ տեսեալ զանհրկիւղապէս և զքաջաբար եւս Կամսարականին Հրահատայ զօրագլխին Արեաց Միհրանայ և այլ աւագանւոյն որ ընդ նմա էին՝ հրաման տային ածել զերանելի սպուհն Սիւնեաց զՑագդ ի նմին աւուր զառաջեաւ իւրեանց։ Եւ սկսան խօսել ընդ նմա և պատուհասել։... Ոչ իւիք, ասեն, կարես գտանել հնարս փրկութեան անձինդ և ապրել՝ բայց թէ ապաւինեալ ի կրակ՝ պագանիցես երկիր արեգական։... Ի սոյն միտս յօժարեցուցեալ գրգռէր բազում անգամ պատգամաւորօք և թղթովք, էր երբեք և յորժամ ինքն առ աւագն Պարսից լինէր ի բանակի, անօրէն իշխանն Սիւնի Գդիհոն, ի վերայ երանելի Սիւնւոյն սպուհին Ցագդայ։... Եւ լուեալ զայս ամենայն բանս երանելոյն Ցագդայ ի Միհրանայ և յայլ ամենայն աւագանւոյն Պարսից, ծանուցեալ և զկամս և զխորհուրդս իւրոյ Գդիհոնի՝ ասէ. Ուրախ եմ և խնդամ վախճանել քրիստոնէութեամբ. քան թէ զհազար հազարս ամաց կեալ ուրացութեամբ, և յաւիտենից անվախճան պատուհասին լինել արժանաւոր։ Լուեալ զայսպիսի բանս դատաւորացն ի սրբոյն Ցագդայ՝ սրով կտրել զգլուխ երանելոյն հրամայեցին, մերձ ի տեղի սուրբ մատրանն առաքելանման նահատակին սրբոյն Գրիգորի, ի գիւղն որ կոչի Բագաւան, նահանգին Բագրեւանդայ, ի լանջակողման լերինն որ անուանի Նպատ, մօտ ի սուրբ տեղի մատրանն որպէս երկու քարընկեցօք։ Եւ կատարեալ սրբոյ Սիւնի սպուհին Ցագդայ զընթացս նահատակութեան իւրոյ յամսեանն Հոռի, որ օր վեշտասան էր ամսոյն, և ամփոփեալ նշխարք նորա եդան անդէն ի սուրբ մատրանն Գրիգորի» (Փարպ. ՀԶ.)։

Փարպեցին, ինչպէս տեսանք՝ ըստ իւրում բարեպաշտ սովորութեան սքանչելեօք կատարուած կը պատմէ զազատութիւնն Հրահատայ. աւելի շնորհակալութեան արժանի էր արդեօք, եթէ յայտնէր մեզ այն ազատութեան բնական պատճառները։ Բայց յաջորդ բանք Փարպեցւոյն—«Տեսեալ զանհրկիւղապէս և զքաջաբար եւս Կամսարականին Հրահատայ զօրագլխին Արեաց Միհրանայ և այլ աւագանւոյն որ ընդ նմա էին, հրաման տային», այլովքն հանդերձ՝ կը ցուցնեն ըստ բաւականին Հրահատայ ազատութեան բնական պատճառն, այսինքն թէ Հրահատ գտնելով պատեհ ժամ «անհրկիւղապէս և քաջաբար» ճողոպրեց զանձն և զիւրսն պահապաններէն, թերեւս և սպանանելով զոմանս ի նոցանէ։

**25.** Յետ մեկնելոյն Միհրանայ՝ Վահան կու գայ ի Վաղարշապատ յուխտ, և անտի մեկնելով կ'երթայ ի Դուին անցուցանել զձմեռն։ Հոն կը պատահի զարմանալի ինչ դէպք, զոր արդարև կ'արժէ պատմել։ Խաբեբայք ոմանք կը տարածեն լուր ժողովրդեան

մէջ, թէ Վասակ, եղբայր Վահանայ, և Սահակ ասպետ ողջ են, կը թափառին յանապատս պաշարեալ ի թշնամեաց, և կը խնդրեն օգնութիւն ազատելոյ և դառնալոյ ի Հայս։ Միամիտ մարդիկ, մանաւանդ կանայք այն սպանելոց, ստիպելով առաքեցին զՄուշեղ Մամիկոնեան գնդաւ, թէպէտ Վահան հակառակ էր և խաբէութիւն կը համարէր այն լուրը, և գնդին առաքումը վնասակար։ Ահա պատմութիւն Փարպեցւոյն։ «Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան չուեալ գայր հասանէր յԱյրարատ գաւառ, և կատարեալ զուխտ պատարագաց ի Վաղարշապատ քաղաքին, հանդերձ ընդ իւր ուխտապահ նախարարօք և այլ զօրօք Հայոց ի տանն Աստուծոյ և ի վկայարանս նահատակեալ կուսանացն, և նախ հոգացեալ զազգատաց դարմանս՝... երթեալք հանգչէին ի բնական ոստանին Հայոց ի Դուինի, ուր զաւուրս ցրտաշունչ ձմերայնոյն սառնամանեացն անցուցանէին։

**26.** «Եւ մինչդեռ կամէին հանգչել առ սակաւ մի և ոգի առնուլ յաշխատութենէն՝ գային յանկարծակի ի կողմանց Վրաց արք դիւազգեցիկք և խելաշուրջք, խօսելով բանս սուտս և տեսիլս խաբէութեան զոր ոչ էր տեսեալ. ի կործանումն և յերկպառակութիւն զօրացն Հայոց, առ զօրավարին Վահանայ յոստանին, և ասէին, թէ Ողջ են և կենդանի սքանչելի ասպետն Սահակ և քաջ սեպուհն Մամիկոնեան Վասակ, և զմեզ յղեցին առ ձեզ, թէ Ի փախչելն ձեր ի կռուոյն Վրաց՝ մնացաք մեք ի կռուատեղին խոցեալք կարեվէրք, և ի սաստկութենէ և ի կարևոր վիրացն զոր ունէաք ի մարմնի մերում՝ մերթ ի սող և մերթ ի յանձն քարշութեամբ հասաք առ միմեանս, և հոլովեալ անկաք ի խիտ թաւուտ տեղիս դժնկաց, և կացեալ ի վերայ մեր առն միոյ քահանայի հոգևորի ի տեղեացն անապատէ, և բարձեալ ի մէնջ զմի մի ըստ անձին՝ տարաւ հեռի որպէս պարսկաւ միով հրասախաչափու, չև ևս գիտելով, թէ ո՛վ ոք իցեմք և կամ յորմէ գաւառէ, իբրև զարս վիրաւորեալս ապրեցուցանել զմեզ կամեցեալ, և կամ դիպեալս վախճանի՝ ամփոփել զոսկերս մեր. և ապա յանկասկած տեղի հեռացուցեալ զմեզ ի տեղւոջէն առն՝ լինէր անհոգացեալ։ Երթեալ այնուհետև ի վանկունսն իւր՝ բերէր մեզ կերակուր ինչ դուզնաքեայ և ջուր, ածեալ ընդ իւր և մանուկ մի միւս ևս այլ, և մատուցեալ մեզ աղաչէր ճաշակել. և մեր ընկալեալ ըստ կարի զկերակուրն ի ձեռանէ սրբոյն ջամբեալ՝ զօրացաք սակաւ մի։ Եւ նորա գիտացեալ, թէ սակաւ մի բերեալ ոգի բացաք զաչս՝ սկսաւ նա այնուհետև հարցանել զմեզ, թէ ուստի՛ էք և կամ յորմէ գաւառէ, քանզի ձևս ձեր և կերպարան ազատս կարծեցուցանեն զձեզ։

Եւ մեր զառաքինութիւն զառն տեսեալ՝ զստոյգ իսկ ինչ պատմեալ ասացաք նմա զմէնջ յանուանէ. և նորա լուեալ և թողեալ առ մեզ զմանուկն՝ գնաց ի մէնջ ի վանկունս իւր։ Եւ ի միւսումն ևս գիշերին ածեալ գրաստ միւս ևս այլ մանկամբ՝ հանէին զմեզ ի գրաստն, և օժանդակելով մեզ երեքեան տանէին յանապատն՝ ուր ինքեանք բնակեալ էին. և թագուցեալ զմեզ առ իւր աւուրս բազումս, բժշկեալ ողջացաք։ Ոմանց աստուածատեաց մարդոց որսալ զմեզ սկսեալ են անձանձրոյթ և կամին սպանանել, և անձանց փառս գտանել ի Պարսկաց և պատիւ։ Իսկ վանականս ընդ բազում անապատ տեղիս և ընդ բազում խորաձորս քարանձաւաց շրջեցուցանէ զմեզ ի ծածուկ, բայց ածել այդր առ ձեզ երկնչի-գուցէ, ասէ, քննեալ ուրուք զհետս՝ գտանիցէ զմեզ և սպանանիցէ։ Բայց արդ փութացարուք արձակել այսր գունդ սաստիկ և զօրագլուխ հաւատարիմ, տանել զմեզ առ ձեզ, որպէս զի հասեալք առ ձեզ՝ լիցուք ի միասին վրէժխնդիրք հաւատոցն ճշմարտութեանն։ Եւ լուեալ զայսպիսի խօսս արանց անմտաց՝ իսկոյն հաւատացեալ ասէին, թէ Արդ փութալ ևեթ պիտի. զի յորժամ նոքա ողջամբ ի Հայս գան, և Պարսիկք զայս լսեն, թէ արդարև նոքա ողջ են՝ խորտակին ամենայն զօրութիւնք նոցա և լքանին։ Այլ մանաւանդ յորժամ յականջս կանանց ևս եհաս բանն, և լուան թէ ողջ են՝ չառնէին այնուհետև դուլ ի տուէ և ի գիշերի, գրգռէին զսիրելիս իւրեանց և զազգականս, զդայեակս նոցա և զծառայս, փութալ ճեպել հասանել վաղվաղակի և ածել զնոսա։ Զայս ամենայն բանս բազում արանցն ի հայ մարդկանէ, ևս առաւել զանդլութիւն կանանցն և զճեպս և զանժուժկալութիւն — որ նման բոցոյ տաչորէին ի խորհուրդս նոցա և ոչ ոք զօրէր ցածուցանել — լուեալ Մամիկոնեանն Վահանայ զօրավարին Հայոց՝ ասէր. Այդ բանք և խորհուրդք արանց վատախորհրդոց են. քանզի գիտացեալ զեկս պարսիկ զաւմարտակի գարնանի յերկիրս Հայոց՝ խորհեալ իմացան քայքայել և պառակտել զժողովումն զօրացն Հայոց՝ որ յուստանիս են, և այսր անդր ցրուել։ Եթէ ընդդէմ ոմանց բանքս ոչ թուէին՝ ես աշխարհակորոյս արանցն ողջ ոչ տայի գնալ յաշխարհէս Հայոց, վասն զի զերանելի եղբօրն իմոյ զնահատակութիւն յաւուր կատարման իւրոյ՝ տեսի և ասեմ թէ զնա մի խնդրէք, և վասն ասպետին մի աշխատիք։ Ապա թէ որպէս զորդիս մարգարէիցն կամիք թարթափել յընդունայնս, որք զԵղիայն խնդրէին ապշեալք, որոց բողոքէր Եղիշա չաշխատել և չլսէին՝ դառնայք ամօթով նոյնպէս և դուք. որպէս և նոքա դարձան ամօթալից և ունայնք։ Բայց զի մի երեւեցայց ումեք բարենախանձ՝ առաջի ձեր են արք զօրուդ Հայոց.

և նախարարքդ, և որ ոք կամի երթալ՝ չարգելում. բայց գիտասջիք թէ որքան կորուստ յանօգուտ երթիցդ հասանէ աշխարհիս Հայոց։ Յայնժամ հաւանեցուցեալ անխորհուրդ և թեթևամիտ մարդոց և մանաւանդ կանանց նահատակելոցն և նոցունց ընտանեաց և գայեկաց զսեպուհն Մամիկոնէից զՄուշեղ՝ բազում այլընտիր գնդաւ արձակէին ընդ արսն շաղաւաշուրթս և խաբեբայս յիրս անօգուտս և ի ճանապարհս զոր ոչ գիտէին։ Որոց տարեալ զնոսա ի սահմանս Վրաց յածեցուցանէին, և բազում պատրողական կարկատելով պատճառս՝ ասէին, փախուցեալք ի սպանողացն ի թաքստոց էին, փոփոխելով յայլևայլ խորաձորս քարանձաւաց և ի ծառախիտ կատարս քարձր լերանց։ Եւ այսպէս ի բազում աւուրս խելացնորեցուցեալ յածեցուցանէին զսեպուհն Մամիկոնէից զՄուշեղ և զգունդն որ ընդ նմա, մինչև ցվախճանել ցրտաշունչ հողմոց ձմերայնոյն սառնամանեաց» (Փարպ. ՀԷ.)։

**27.** Յետ Միհրանայ կու գայ Զաումիհր ոմն Հազարաւուխտ մեծ բազմութեամբ, և խորհրդով ոմանց Վահանայ հակառակորդներէն, որ իմացուցին նմա, թէ մի մասն Հայոց գնդին էր ի Վիրս և Վահան կը գտնուէր սակաւ արամբք ի Դուին՝ գալով կը պաշարէ քաղաքը։ Վահանեանք տեսնելով այնչափ բազմութիւն և գիտնալով, թէ դէմ առ դէմ ճակատել ընդ նոսա և յաղթել անհնար էր՝ մեծ ուժգնութեամբ յարձակելով միաբան կը ճեղքեն բանակը, և յապշութիւն Պարսից կ'անցնին անվնաս. միայն ոմն Ործի տնուն Դիմաքսենից տոհմէն և Քաջաջ ի Սահառունեաց՝ կ'սպանուին. Յոհան կաթողիկոս որ էր ի բանակին՝ մեծ դժուարութեամբ կ'ազատի։ Նոյն օրը Մուշեղ, յետ թափառելոյ լեռներ և ձորեր ի զուր ի խնդիր Սահակայ ասպետի և Վասակայ, կը հասնի ի Դուին և տեսնելով զպատերազմն վճարեալ՝ կ'երթայ ընդ փախստականս առ Վահան.—«Եւ եկեալ ժամանակ ծաղկոցաց գարնանւոյն օդոյն շնչմանց, աւետաւոր ջերմութեանց մերկոցն չքաւորաց, եկեալ հասանէր յանկարծակի յերկիրս Զաումիհր Հազարաւուխտ սաստիկ և բազում այլընտիր զօրօք. դիմեալ անցանէր ստիպով ընդ կամուրջ գետոյն Երասխայ, և ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ՝ բանակէր այն օր։ Քանզի զգացուցեալ էր նմա քաջ տեղեկութեամբ ուխտանենգացն յաշխարհէս Հայոց զերթն կիսոյ գնդին Հայոց ի Վիրս, և եթէ սպարապետն Հայոց Վահան Մամիկոնեան լոկ թուով նախարարօք և սակաւ այրուձիով էր յոստանին, յորոյ վերայ հասեալ, ասեն, քո այսչափ ընտիր բազմութեամբ այրուձիոյ՝... երեքնակի և չորեքնակի պատեալ պաշարեալ զնոսա՝ հանես ընդ սուր զամենեսեան, և կատարեալ տանիս ի գլուխ զիրս գործոյս աշխա-

տութեան, և դու պատուեալ փառաւորիս ի Թագաւորէն, և մեք հանգչիմք յերերագին աշխատութենէս յայսմանէ։ Եւ լուեալ զայսպիսի բանս Հազարաւուխտոյ և այլ աւագացն որ ընդ նմայն էին՝ ճեպով ի վաղիւն դիմէին ի վերայ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի և զօրացն որ ընդ նմայն էին ի ժամուն։ Եւ հասեալք մօտ ի քաղաքն Դուին՝ յօրինէր Հազարաւուխտ զճակատն ըստ օրինի գործոյ պատերազմին, և կարգեալ զուազմն ի միջոցէ մայրուոյն որում Խոսրովակերտն ասեն՝ անցուցանէր ի վերայ դաստակերտին մինչև ի լեռնակողմնն զոր Ջրվէժն կոչեն։ Տեսեալ սպարապետին Հայոց Վահանայ զայսչափ բազմութիւն զօրացն Պարսից, և այլ Նախարարացն Հայոց որ ընդ նմա էին, և այլ ռամիկ այրուձիոյն Հայոց, թէպէտ զանընդդիմակաց չափաւորութիւն իւրեանց գիտէին, տեսանելով ծովացեալ դնդաւն Պարսից զամենայն դաշտն ռահասարակ՝ այլ սակայն և ոչ կարի զարհուրեալք փախչել փութային, այլ ըստ բաւականի զօրուն իւրեանց բաժանեալ ի մի մի և յերկուս Նախարարս՝ յարձակէին ի վերայ։ Եւ առեալ քաջասրտաբար մասն ի գնդէն Պարսից՝ բազում արս ընտիրս դիաթաւալ յերկիր կործանէին, և իւրեանց դարձուցեալ զերասանակս երիվարացն՝ գնացին ի բաց քաջաբար։ Վասն զի և քաջաբար փախուստ առն հզօրի սաստիկ ահ երկիւղի գուշակէ առ միւսանգամ գործ թշնամեացն գնդի, որ եղեալ երևեցաւ բազմաց, և ճաշակեալ առին զհամ և զարմացան, մանաւանդ առ աւեւ քան զայլսն գիտաց քաջագոյն սնապարծ իշխանն Սիւնեաց Գդիհոն։ Բայց անդէն ի տեղւոջն ընտրեցին կամաւոր յօժարութեամբ զմահ անձանց և Նահատակեցան երկու արք ի Նախարարացն Հայոց, կռուեալք լաւաբար և զքաջութիւն գործոյ ցուցեալ, երանելին Որդի ի տոհմէն Դիմաքսենից, և երանելին Քաջաջ ի տոհմէն Սահառունեաց, եդեալ զանձինս ի վերայ ուխտին սրբոյ՝ պսակեցան։ Եւ զսուրբ հայրապետն Հայոց տէր Յոհան ընկեցին ի ձիոյն, թողին կիսամահ. վասն զի այնպէս ճեպով հասուցին սադրիչք անօրէնութեանն զՀազարաւուխտ ի վերայ Հայոց՝ զի և ոչ աւուրբ միով յառաջ ժամանեցին խոյս տալ ի քաղաքէն և անձին հոգալ, և ոչ ինքն կաթողիկոսն Յոհան. այլ ամենազօր գթութիւն Փրկչին ողորմեալ խնայեաց յուխտասէր հօտն իւր, և ածեալ ողջ զհայրն սուրբ՝ եցոյց խաղաղութեամբ ժողովրդեան իւրում։ Եւ ի նմին աւուր յետ վճարելոյ գործոյ պատերազմին՝ գայր հասանէր սեպուհն Մամիկոնէից Մուշեղ հանդերձ այրուձիովն որ էին ընդ նմա, և ոչինչ ժամանեալ յանբոկ գործոյ պատերազմին պիտոյից՝ դարձեալ ընդ այլ փախստէիցն գնային ի բաց» (Փարպ. ՀԸ.)։

28. Վահան և իւրքն յետ քաջութեամբ խոյս տալոյ ի Հազարաւուխտայ՝ կ'երթան ի սահմանս Խաղտեաց. Հազարաւուխտ իւր բոլոր զօրութեամբ հետամուտ լեալ Վահանեանց՝ կը հասնի յՈքաղ գաւառ Տայոց, և կը բանակի Գիւղիկ և Վարդաշէն անուն գիւղերուն մօտ, և լսելով թէ Վահան էր ի Տաղգոմս ի բաժնին Յունաց, հասնի հոն, բայց չգտնելով զՎահան՝ կը բռնէ զկանայս երկուց Կամսարականաց, և յուսալով ի ձեռն նոցա որսալ զԿամսարականսն որ էին թիկունք Վահանայ՝ կ'երթայ ի Բասեան, ուր կ'ընդունի հրաման թագաւորէն երթալ նուաճել զՎիրս, և փոխանակ իւր թողուլ զՇապուհ ոմն Միհրանեան տոհմէն.— «Եւ գնայր զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան ինքն և նախարարքն Հայոց որ ընդ նմա էին, հանդերձ իւրաքանչիւր ուրուք դայեկօք և սերելի ծառայիւք, ուշ եդեալ երթալ գագարել առ վայր մի յամուր տեղիս սահմանացն Խաղտեաց, ազի առնուլ և հանգչել առ վայր մի։ Զորոց զկնի հետամտեալ ճեպով անհանգիստն Հազարաւուխտ՝ երթայր դիմեալ ամենայն զօրօք հանդերձ. և զբազում տեղիս ամրոցացն Հայոց ընդ երթալն առեալ հարկանէր, քակէր աւերէր և անցանէր, և զբազումս կոտորեալ հանէր արեանց ճապաղիս. խնդրէր հնարս փքալով մեծամեծս, կամ առնել ձերբակալս զքաջ Մամիկոնեանն Վահան, և կամ սպանանել պատերազմաւ և ապա հանգչել։ Եւ երթեալ յՈքաղն՝ բնակէր մօտ ի գեւղն որում անուն էր միումն՝ Գեւղիկ, և միւսումն՝ Վարդաշէն, և բանակեալ անդ զօրն զայն՝ լսէր ի վաղիւն, թէ Մամիկոնեանն Վահան մօտ էր ի նա ի Հոռոմ տան, ի գաւառին Տաղագոմ։ Եւ կարծեցեալ անդ լինել զիմաստախորհուրդ Մամիկոնեանն յանհոգս, որպէս ի Հոռոմ տան անկեալ՝ պնդեալ յանկասկածս ի տեղին տեղեակ առաջնորդօք՝ հասանէր ընդ առաւօտուն ծագել։ Եւ գտեալ անդ բազմութիւն այլ մարդկան, ընդ որս դիպեցան և կանայք երկուց Կամսարականացն, տեառնն Շիրակայ Ներսեհի և Հրահատայ. յորոց վերայ անկեալ յանզգաստս զօրացն Պարսից՝ զբազումս ի ռամիկ մարդկանէն Հայոց սպանանէին, և զկանայս Կամսարականացն եղբարց, զՆերսեհի և զՀրահատայ, ըմբռնեալ տանէին ի բանակն Պարսից։ Բայց զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի և այլ ումեք ի նախարարացն որք ընդ նմայն էին, ոչ պատահեալ՝ դառնայր. այլ տուգեալ վասն կանանցն Կամսարականաց, թէ արդարև նոցա կանայքն են՝ զուարճացեալ ուրախանայր ընդ միտս իւր, խորհելով այսպէս, թէ արդ նոքօք հաստատ կարեմ որսալ և ըմբռնեմ զՎահան, քանզի նոքա են նորա սիրտ։... Բայց զկանայս երկուց Կամսարականացն հրամայէր ըստ օրինացն քրիստոնէից պահել սրբութեամբ և ամենայն

զգուշութեամբ։ Եւ ինքն չուեալ յՈքողայ իջանէր ի գաւառն Բասեան, և բանակէր մօտ ի գիւղն որ անուանի Դու, ի դաշտին Աղբերականաց զոր Արծաթաղբերսն կոչեն։ Եւ կացեալ անդ օր մի՝ դեսպան ի դրանէ հասանէր առ նա հրովարտակաւ, յորում գրեալ էր թագաւորին Պերոզի զիւր ամենայն Արեաց ուժով ի վերայ Հեփթաղին զդիմեցումն, և նմա հրամայէր երթալ ի Վիրս, և զթագաւորն Վրաց զՎախտանկ կամ ունել և կամ սպանանել, և կամ ի բաց փախուցանել յաշխարհէն, և զՇապուհն ի Միհրան տոհմէն անդէն յաշխարհին Հայոց թողուլ գնդաւ մարզպան» (Փարպ. ՀԹ.)։

**29.** Հազարաւուխտ ընդունելով թագաւորին հրամանը՝ կը թողու զՇապուհ հանդերձ Գդիհոնիւ և կ'երթայ ի Վիրս. ուր շատեր կը միաբանին ընդ նմա, և Վախթանգ խոյս կու տայ ի կողմանս Եգերացւոց։ Իսկ Շապուհ դնել տալով զկանայս Կամսարականաց Բասենոյ բերդը և հրամայելով պահել զնոսա պատուով՝ կը ջանայ բանիւք հրապուրանաց բաժնել զնոսա ի Վահանայ, սակայն չյաջողիր, որպէս մանր կը պատմէ Փարպեցին.—«Եւ Հազարաւուխտոյ ընկալեալ զհրովարտակն և լուեալ զհրաման թագաւորին՝ թողոյր աստէն զՇապուհն պարսիկ այրուձիով, այրընտիր գնդաւ, զտէրն Սիւնեաց զԳդիհոն առ նմա ամենայն գաւառին Սիւնեաց գնդաւ, և ինքն փութով գնայր ի Վիրս... և միաբանեցուցեալ զշատս յաշխարհէն Վրաց՝ գունդ կազմէր։ Եւ տեսեալ թագաւորին Վախտանգայ, թէ իւրոցն սակաւ թողին զնա և գնացին առ Հազարաւուխտ, և Հայք դեռ ևս անձեռնհաս են և վտանգեալք՝ խոյս տուեալ յաշխարհէն Վրաց՝ ի կողմանս Եգեր աշխարհին հասանէր առ վայր մի։ Իսկ Շապհոյ տարեալ զկանայս Կամսարականացն յամուր բերդն Բասենոյ զոր Բողբերդն կոչեն՝ անդ թողոյր. և յանձն արարեալ Ցրզտավշնասպայ բերդակալի զկանայս Կամսարականացն՝ պատուիրէր նմա բազում զգուշութեամբ պահել ըստ օրինացն քրիստոնէից զնոսա սրբութեամբ։ Քանզի կանայքն իսկ Կամսարականացն զնոյն ասէին բազում անգամ. Թէ զարսն մեր արդարև կամիք նուաճել՝ զայդ և եթ տուք լսել նոցա, թէ մեք խաղաղութեամբ եմք... քանզի ամենայն Հայոց գիտելով ասեմք զայս, և վկայեն որ աստ առ ձեզ հայ մարդիկ են, զի քան զմեզ զայլ կին նոքա ոչ գիտեն։ Ապա թէ այլ ինչ լսեն վասն մեր, ի նախատանաց իսկ և յամօթոյ, թող ի մեղաց և ի դարշութենէ ըստ մերոց օրինացն՝ առաւել դնեն զանձինս ի մահ։ Քանզի և ինքն իսկ Շապուհ ոչ միայն ի լրոյ և եթ գիտէր զնոցա պնդութիւն յաղագս քրիստոնէութեան, այլ ինքն իսկ որպէս իսկ ձեռասուն տեղեակ էր նոցա ամենայն իրաց։ Համբաւ և պատուէր ստէպ տայր Կամսարա-

կանացն, առ որս յղէր հանապազ, թէ «Մի կորնչիք և արքայից արքայի ի ծառայութենէ մի ելանէք. այլ եկայք նուաճեցարուք, և զկանայս ձեր առ ձեզ առէք, և իմով միջնորդութեամբ զվնասդ թողուլ տամ արքայից արքայի, և զքրիստոնէութիւնդ զոր սիրէքդ, որպէս ցայժմ կալեալ էք հանդարտութեամբ՝ ես առաւել յայսմ հետէ կալարուք և մի երկնչիք... և եթէ կամիք և կարէք ինչ յաւ նպաս ցուցանել արքայից արքայի, և հնարէք զՎահան սպանանել՝ գտանիցէք ի թագաւորէն պարգևս և պատիւս՝ զոր ոչ է գտեալ ձեր ուրուք ի նախնեաց ի թագաւորաց:... Եւ լուեալ զայսպիսի պատգամս երկոցունց Կամսարականացն ի զօրագլխէն Պարսից Տապհոյ... տէրն Շիրակայ Ներսեհ և Հրահատ զայս պատասխանի յղէին, թէ Մեր գործ և աշխատութիւն չէ վասն կնոջ և որդւոյ... երկինք և երկիր և ամենայն որ ի նոսա է՝ չէ համեմատ այնմ պատուականութեան որում մեք ցանկամք: Չէաք այնչափ անզգայք, թէ ոչ կարէաք խաբել զձեզ, որպէս և այլ հացկատակեանդ որ առ ձեզ են, և առնուլ կապերճ մի մոխիր և տալ ցաղախին մի մեր, որպէս նա զայն կամէր՝ պղծել, և մեք սնոտի փառօք ի ձէնջ առ-վայր մի վայելէաք և պայծառք երևէաք: Այլ վասն կանանցդ մերոց տամք ձեզ նշան ինչ, և ձեր փորձեալ քաջ քննեցէք. եթէ արդարև մեք յաղագս հաւատոյն զոր սիրեմք և ունիմք հաստատապէս, և հաճոյ է գործս մեր ճշմարտին Աստուծոյ և ընդունելի՝ զմեզ փրկէ ի նեղութենէ և զկանայսդ մեր պահէ ամենայն սրբութեամբ և տայ ցմեզ. ապա թէ ոչ այդպէս լինի՝ մերում թերահաւատութեան մեղապրեսցուք, և մի ինչ ձերում բռնութեանդ և սաստից: Եւ զայս բանս այսպէս յղեալ երկոցունց Կամսարական եղբարցն առ Հազարաւուխտ՝ ինքեանք ես առաւել քան զառաջինն անձամբ և զայլս յորդորելով պատրաստ էին արքանեկութեան զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնէի՝ զամենայն գործ որ և հրամայէր նոցա» (Փարպ. Գ.):

**30.** Բայց Տապուհ զհետ էր ունել զՎահան, քանզի կը յուսար նուաճել ապստամբութիւնը՝ եթէ սպաննէր զնա կամ բռնէր: Իսկ Վահան, թէև սակաւաւոր՝ չէր տար դուլ Պարսից, գիշերային յարձակելով յանկարծ ստէպ ստէպ Պարսից բանակին վրայ, հասուցանելով անհնարին տագնապ: Բայց որովհետև նուազած էր Վահանայ զօրութիւնը՝ խորհեցաւ գտնել նոր օգնութիւն Մամիկոնեաններէն, ուստի և գնաց ի կողմանս Հաշտենից.—«Եւ զհետ գնացիցն Հազարաւուխտոյ ի Վիրս՝ մնայր Տապուհ յՈքաղս, և ջանայր կատարել զհրամանն Հազարաւուխտոյ և որսայր զՄամիկոնեանն Վահան, գտանել զնա ի ձեռն և սպանանել, և ոչինչ լինէր

ձեռնհաս։ Բայց Մամիկոնեանն Վահան զամենայն օր ոչ տայր դուլ առնուլ զօրօք իւրովք Պարսկաց ի զակշին. այլ զցայգ զամենայն նետաձիգ լինելով ի ներքս՝ էր զոր ինքեանց Հայոցն խոցոտեալ սպանանէին, և էր զոր ինքեանք Պարսիկքն զինքեանս ի վերայ միմեանց կուտակելով հեղձամձուկս առնէին։ Եւ երթեալ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեանն հանդերձ արամբքն որ ընդ նմա էին՝ բանակէր ի գիւղ մի մերձ, որ էր ընդ իշխանութեամբ Մամիկոնէից, որում անուն էր Ծաղիկ, կամեցեալ անցանել ի կողմն սահմանակցութեանն Հաշտենից, յաղագս գտանելոյ ի նոցանէ օգնութիւն» (Փարպ. ՁԱ.),

Ծապուհ, որ կը դիտէր Վահանայ շարժումներն՝ կը պնդէ ըզհետ։ Փարպեցին կը պատմէ հոս Վահանեանց և Պարսից մէջ փոքր կռիւ մի, ուր չունեցաւ մասն Վահան։ Վահան, ասէ, կ'երթար Կարնոյ ծովուն արևելեան կողմէն, իսկ Պարսիկք կ'երթային զկնի։ Այնպէս դիպեցաւ, որ Ներսեհ Կամսարական և Մուշեղ Մամիկոնեան զատուած էին ի Վահանայ և կ'երթային ի հիւսիսոյ նոյն ծովուն, և գալով ի գիւղ մի Կարնոյ, Արծաթի անուն, ուր հնձողք կ'աշխատէին՝ Պարսիկ գունդ մի որ հետամուտ էր նոցա, չհամարձակելով մօտենալ նոցա՝ կը նեղէին մշակներն։ Խուրս անուն ոմն, դայեկորդի Ներսեհի Կամսարականի, տեսնելով ի հեռուստ պարսիկ մի, որ կամէր սպանանել մշակներէն զմին, որ խոյս կու տար ի նմանէ՝ զայրանալով յարձակեցաւ և սպաննեց նիզակաւ Պարսիկը. զայս տեսնելով Ներսեհ և Մուշեղ, տեսնելով ևս որ հետամուտք չէին բազում՝ յարձակեցան, և կոտորելով բազմութենէն եօթանասուն մարդ՝ դարձան առ Վահան.—«Ազդ եղև Ծապհոյ զօրավարին Պարսից, եթէ ահաւասիկ Մամիկոնեանն Վահան բանակեալ է ի գիւղ մի, և արք են ընդ նմա թուով յոյժ սակաւք։ Եւ կանխեալ վաղագոյն ընդ առաւօտն զօրագլուխն Պարսից Ծապուհ ամենայն բազմութեամբն որ ընդ նմա՝ յանկարծակի ի վերայ եկանէր գնդին Հայոց։ Եւ գունդն Հայոց իբրև հանապազազգոյշս, վասն ցանդ անծոյլս յօրինելոյ զնոսա զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, լինելով պատրաստք՝ գնային ի տեղւոյն անվնասք։ Սակայն գունդք զօրացն Պարսից ոչինչ փոյթ առնէին այլոցն, զկնի զօրավարին Հայոց Վահանայ անցանէին. քանզի ասէին, Թէ նմա միայն գտանեմք հնարս՝ ամենայն իրք մեր վճարեալ են և յանգ։ Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան երթայր ընդ կողմն արևելից ծովուն Կարնոյ, և գունդք զօրաւորացն Պարսից զկնի նորա երթային։ Եւ Մուշեղ ի տոհմէն Մամիկոնէից և Ներսեհ Կամսարական տէրն Շիրակայ ընդ կողմանն հիւսիսոյ

ծավուն, վրիպեալք առ փոյթ ժամուն ի զօրավարէն Հայոց Վահանայ Մամիկոնենէ՝ սակաւ արամբք երթային խռովեալք։ Եւ մերձեալք ի գիւղ մի Կարնոյ, որում անուն էր Արծաթի, և հասեալք ի հեղեղատ մի որ մերձ էր ի գիւղ մի, և կամեցեալք յեզեր հեղեղատին առ վայր մի հանգչել, ուր և հնձողք արտորայոցն շուրջ զտեղեօքն գործէին։ Իբրև գիտացին պարսիկքն, թէ ոչ եղեն սոցա հասու՝ կամեցան մշակացն տեղեացն վնասել, թէ ընդէ՞ր բնաւ ծառայից արքայից արքայի տայք զրջել յաշխարհի ձերում։ Եւ տեսեալ Խուրսայ որ էր ի գաւառէն Արշամունեաց ի գեղջէն Շիրմաց, դայեկորդի տեառն Շիրակայ Կամսարականին, զոմն ի Պարսից զօրացն, զի կամէր սպանանել զայր մի կարնացի ի մշակացն, և մշակն շուրջ գալով զքարդիւ միով խուսափէր ի սպանողէն, զայրացեալ ընդ սեպհին Մամիկոնէից Մուշեղի և ընդ Կամսարականին Ներսեհի՝ ասէ. Ո՞չ ապաքէն զմահ առնես, թէ մեռանի ի պարսկէն՝ ի մէնջ պահանջէ վրէժխնդիրն Աստուած։ Եւ յարձակեալ նիզակաւ Խուրսն ի վերայ պարսկին՝ անդէն ի տեղւոջն սատակէր, և զերծուցեալ ապրեցուցանէր զկարնացին ի սպանողէն։ Եւ գրգռեալք ընդ բանսն Խուրսայ սեպուհն Մամիկոնէից Մուշեղ և Կամսարականն տէր Շիրակայ Ներսեհ, և ընդ գործսն հայեցեալ ընդ Խուրսայ զոր գործեաց քաջաբար, տեսեալ և զհետամուտսն զկնի նոցա, թէ չեն կարի բազումք՝ յարձակեցան ի վերայ Պարսկացն սակաւ արամբք որ ընդ նոսա էին, և զօրացեալ ջարդում արեանց ճապաղիս ի տեղւոջն հանէին, և զայլսն փախստականս արարեալ դարձուցանէին ընդ կրունկն ամօթով։ Եւ եղև թիւ մեռելոցն ի տեղւոջն եւթանասուն և երկուց արանց։ Եւ լուեալ զայսպիսի յաջողութեան գործ զօրավարին Հայոց Վահանայ՝ ետ փառս, զի և առանց նորա կործանեալ խորտակէր Աստուած զզօրութիւն թշնամւոյն» (Անդ)։

**31**. Վահան, ինչպէս արդէն խորհած էր՝ կ'երթայ իւրովքն յԱրշամունիս, և բնակելով յԵրէզ՝ կամէր հանգչել երկու օր. բայց Նապուհ ըստ խորհրդոյ Գդիհոնի կը հասնի, չտալու համար Վահանայ ժամանակ գտնել օգնութիւն։ Վահան իւր զօրուն և երիզացի շինականօք կը յարձակի Նապհոյ բանակատեղւոյն վրայ, կ'սպանուին շատք ի Պարսից, և ի Հայոց՝ սեպուհ մի Գաբեղեան Գաբաղ անուն։ Ապա կը մեկնի Վահան յայլ գիւղ Ողին անուն կամ գիւղ Նտէոյ. դարձեալ կը հասնի Նապուհ անհնարին ցասմամբ, ինչպէս կը թուէր՝ իբրև չորս հազար ու։ Թէպէտ քան զնոսա շատ նուազ էր Վահանայ զօրութիւնը՝ խորհեցաւ հարկանելով ի դիմի կամ յաղթել և կամ առնուլ մարտիրոսութեան պսակը, քանզի ըստ մտաց Հայոց յայնժամ, այս պատերազմներուն մէջ մեռնել՝ մարտիրոսանալ

էր։ Կռիւն էր սաստիկ. Հայոց գնդէն մասն մի կերթայ փախստեայ. կը մնան առ Վահանայ իբր քառասուն կամ աւելի նուազ, մինչև գոչել ոմանց առ Վահան՝ զգուշանալ առ ժամուն. բայց նա իւրովքն, մանաւանդ Մուշեղիւ Մամիկոնենիւ և երկու Կամսարականօք այնպէս սարսափեցուց զՆապուհ՝ մինչև կոչել նմա զԳդիհոն յօգնութիւն։ Զայս տեսեալ քաջացն Հայոց՝ համարեցան պատեհ ժամ, պատառեցին Պարսից գունդը, հասին, հարին, կործանեցին յերկիր զԳդիհոն, զահագին վիրագն, ապա ընկրկելով յետս՝ կ'երթային ոչ շատ հեռի ի Պարսից, որ մնացին ապշեալ, մանաւանդ Նապուհ որ աւէր. Եթէ Վահան կատարեց այնչափ սակաւուք այնպիսի մեծ գործ, ինչպէս կարող ենք զդէմ ունել նմա՝ եթէ մօտակայ գաւառներուն հայերէն գտնէ օգնութիւն։ Այս կռուոյն մէջ մեռան ի Վահանեանց չորս անձինք միայն երևելիներէն։ Սիւնեաց զօրքը թափելով իւրեանց իշխանին փորոտին՝ կը տանին մարմինն ի Սիւնիս, և ինքեանք կը ցրուին. — «Եւ ինքն Վահան գնայր ի սահմանս Հաշտենից ըստ յառաջադրեալ խորհրդոյն իւրոյ, և հասեալ բանակէր ի գաւառին Արշամունեաց, ի գեւղն որ կոչի Երէզ. կամեցաւ հանգչել աւուրս երկուս։ Եւ զօրավարն Սիւնեաց Գդիհոն փութացուցանէր ստիպով զզօրագլուխն Պարսից գնդին զՆապուհն, ասելով թէ Զառնն Վահանայ Մամիկոնէից զփորձ քաջութեանն և՛ գաւառք, և՛ ամենայն աշխարհն Արեաց, և ես իրաց և գործոց առնն իմանալ ինչ ես ոչ կարեմ։ Եթէ գունդն ամենայն ի Դունի առ նմա միաբանեալ էր՝ նա մեզ անդէն զիւր քաջութեանն գործ ցուցանէր. բայց արքայից արքայի Թագն և Արեաց փառքն մեզ այնպէս յաջողեցին, զի նորա իրքն այնպէս դիպեցան որպէս տեսաքն, և մեզ բարի վճարումն եղև։ Եւ արդ տեսաք, այդչափ սակաւ արամբ զինչ գործ գործէ այրն, և օր քան զօր նուազեցուցեալ ըզգունդս մեր վատնէ։ Արդ՝ թէ ուստեք ևս այլուստ կարէ գտանել օգնական՝ տեսջիք զի նա ամօթով զմեզ դարձուսցէ և սակաւաւորս. այլ և դառնալոյ իսկ մեզ անդէն անվստահ եմ շատ։ Բայց փութա, և մի՛ տար առնն հանգիստ առնուլ, գուցէ թէ մեք ծուլանամք՝ և նա առնիցէ զմեզ աշխատ և ամաչիցեմք։ Եւ եթէ յես միայն թողուք զնա՝ ցուցանեմ ձեզ յաւուրս հինգ իմովս իսկ գընդաւս, թէ որպիսի՛ մատնեալ վատի կորուսանեմ զնա և զօրս ընդ նմայն են»։ «Այս պիղծ որ էր ի նմա, յաւելու Փարպեցին, գուշակէր նմին զանձնէ իւրմէ, թէ յետ հինգ աւուր չար մահուամբ սատակելոց ես յարանցն որք են ընդ Մամիկոնեանն Վահանաւ։ «Լուեալ զայս ամենայն բանս զօրագլխին Պարսից Նապհոյ՝ ոչ տայր դուլ անձինն և ոչ զօրացն որ ընդ նմայն էին, այլ փութով զհետ

տունն երթայր սրտմտեալ, և հասեալ բանակէր ի տեղիս ուրեք անյայտս գետառուէին։ Իսկ զօրավարին Հայոց Վահանայ և իւր ևս զօրուն գոնեա զայն գիշեր հանգստիւ յագեալ քնով, և հաւանեցուցեալ զաքսն գեղջն Երիզայ, քանզի ամենայն անձն երկիւղիւ և կամաւ լսէր զհրաման նորա իբրև թագաւորի, և առեալ ընդ իւր զայս զօրուն իւրոյ և զշինականսն զերիզացիսն՝ գայր հասանէր ի վերայ ղակշին ի գիշերի, և սպարափակ արարեալ երիզացօքն զտեղի կռուոյն իւրեանց՝ ինքեանք ըստ նմանութեան տեղատարափ շառաչման նետաձիգ սաստկութեամբ զգունդս Պարսկացն ահաբեկէին։ Խառնէին ընդ միմեանս զամբոխ զօրացն որ ի ղակշին էին, ևս առաւել ինքեանք զինքեանս Պարսիկք առաթուր հարեալ կոտորէին, և լինէր ձայն լալոյ և ձայն գուժի ի բանակէ անօրինացն։ Բայց ի Հայոց գնդէն Գաբաղ միայն սեպուհն Գաբեղեան կամաւորութեամբ կռուեալ և մեծ արութիւն ցուցեալ՝ խոցեցաւ, յորոց վիրաց կատաքելութեան պսակի յետ սակաւ ինչ աւուրց արժանի եղև։ Եւ զօրավարն Հայոց Վահան դարձեալ ի կոտորածէ թշնամեացն, երթեալ հանգչէր զմնացեալ մասն գիշերոյն յՈղին գեղջն, զոր Նոեայ անուանեն, մինչև յառաւօտուն ծագել։ Եւ կամեցեալ հանգչել առ վայր մի զօրացն Հայոց Վահանայ ի ծանրութենէ գիշերոյն աշխատութեանց՝ զաչս ի վեր առեալ տեսանէին, և ահա հասեալ կայր ի վերայ նոցա զօրագլուխն Պարսից Նապուհ, զայրագնեալ սրտիւ մրմռայր իբրև զգազան, վասն զի առաւել քան զամենայն աւուրց՝ այն գիշերոյն վնասք առաւել թուէին նմա և կարևորք. որ եղև իսկ արդարև այնպէս, այլ ոչինչ նման առաջիկայ մեծ բեկմանն, զոր առժամայն էր տեսանելոց և իսպառ բեկանելոց։ Տեսեալ զօրավարին Հայոց Վահանայ զյանկարծահաս դիմեցմունս զօրագլխին Պարսկաց Նապհոյ ամենայն բազմութեամբ զօրուն ի վերայ նոցա, թէպէտ և անպատրաստ տեսանէր զիւր գունդն ի ժամուն և նուազս առ սաստկութեամբ թշնամեաց զօրուն՝ սակայն զանգիտէր և բնաւ իսկ ոչ, այլ հրաման տուեալ փութանակի կազմէր որքան իսկ էին. ձայն բարձեալ գոչէր առիւծաբար... Մեռանել ի վերայ ուխտի սրբոյ՝ վիճակ է մարտիրոսութեան։ Յաղթութեան մասամբ բազում անգամ պայծառացոյց զմեզ Աստուած, և գոհ եմք. իսկ որ առաւել մեծն է և քան զամենայն ի վեր՝ զայն ևս պարգևեալ շնորհեսցէ մեզ Հզօրն և պսակեսցէ։ Սուրբ Հոգին է որ ասաց... «մինն զհազարս հալածէ, և երկու զբիւրս շարժէ»։... Եմք մեք թուով սակաւ, հազիւր, թերևս յոլովք կամ նուազք. և եթէ խոստմունս ասացելոցն կատարել ի մեզ կամի Հզօրն՝ ապա ի նոցա յերեք հաբիւր հազարս զօրացն շատ մարդկան բազմութիւնք պիտին, քանզի

ոչ գոյ ի նոսա ըստ կշռելոյ ական աւելի քան զչորս հազարս արանց։... Եւ տեսացեալ զայս ամենայն բանս զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի, բաժանեալ որքան իսկ էին արք զօրուն ընդ նմա՝ տայ իւրաքանչիւր զօրագլխացն՝ զորոց կարծէր թէ ի դէպ է և պատշաճ։ Եւ մինչդեռ նա կազմ էր յարձակմանն, և զօրքն Պարսից ճակատեալք կարգմամբ գային սաստկապէս ի պատերազմ՝ Հայեցեալ (Վահան) տեսանէ, զի գունդն ամենայն Հայոց դարձուցեալ զերեսս յուխտէն երդմանն Աւետարանին և ի խրատուէ զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի՝ երթային փախստեայք ամենեքեան։ Եւ մնաց ինքն և յուխտապահացն Մուշեղ ի տոհմէն Մամիկոնէից, և երկոքեան Կամսարականքն որդիք երանելոյն Արշաւրայ, ինքեանց երկուք կամ երեք դայեկօք. և այլ թուով արք որք յազատաց և յիւր իսկ ի Մամիկոնէից տանէն, ընդ բնաւ որպէս թէ քառասնիւք կամ նուազիւք ևս։ Որոց ևս տեսեալ զփախուստն ամենայն գնդին Հայոց առհասարակ և զարհուրեալք՝ ասէր ոմն ցզօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան, թէ Յուշ, տէր, յուշ, այսինքն՝ թէ հնար ինչ է, ի ժամուս տեղի տալ և անձին զգուշանալ։ Եւ զօրավարին Հայոց Վահանայ տեառնագրեալ զինքն՝ բարձր ձայնիւ ասէր, թէ Յիս արդ ոք յուշ մի ասէք, զի ինձ յուսալ ի մարդ և կամ պարծել մարդով քաւ լիցի։ Եւ քաջաբար ի մէջ ամենայն զօրացն Պարսից յարձակէր հանդերձ ուխտապահ արամբք սակաւուք որ մնային առ նմա։ Եւ ապշեալ ընդ ահաւոր աներկիւղած ոյժն զօրավարին Հայոց Վահանայ, և ընդ այլ սակաւ արանցն որ ընդ նմա զհետ, զօրագլխին Պարսից Շապհոյ՝ ճեպով ցիշխանն Սիւնեաց առ Գդիհոն յղէր, ասէ. Զեռն տուր յիս կողմն, զի իրս անպատումս իմն նորոգս տեսանեմ. զի թէ արդարև զօրութիւն իմն աներևոյթ է որ օգնէ նոցա և մեզ չերևի՝ զայն ես ոչ գիտեմ. բայց եթէ անմտութեամբ ցանկան անձնամահք լինել՝ ապա ի մէջ արարեալ զամենեսեան զնոսա այսօր ձերբակալս առնեմք։ Եւ իշխանն Սիւնեաց Գդիհոն խնդալից եղեալ ընդ կոչն Շապհոյ՝ նշկահելով փութանակի ի տեղին արշաւէր. և զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան հանդերձ իւր միասիրտ սակաւ արամբք յարձակեալ հերձանէ զքովանդակ գունդն Պարսից, որպէս յորդահոսանս բազմութեան ջրոց որ հեղեղատեն զերկիր և անցանեն։ Ինքն հզօրաբար քաջ ուխտակցօքն նման առիւծու ընդ մէջ ամենեցուն յայնկոյս ելանէր. և սպանեալ իւր և արանցն որ ընդ նմա՝ բազում արս հզօրս պատերազմողս ի զօրացն Պարսից՝ հարեալ խոցէին նիզակաւ ընդ անութ կարեվէր զհպարտ իշխանն Սիւնեաց զԳդիհոն, և զահաւորալուր ամրութիւն զինուն յոր պանծացեալ յուսայր՝

ցելեալ վեր ի վայր, թափ ընդ լեառըն զնիզակատէգն հասուցանէին։ Որոյ դառնակոռոչ չարալլուկ հեծմամբ յաւուրս սակաւս մըճռլեալ զոգին սատակէր. որ պարծէրն ամբարտաւանութեամբ և ասէր, թէ Ես ընդ Վահանայ և այլ հայերդ ոչ եթէ նետիւ կըռուիմ, այլ գդդըկով պողեալ զբոլորս ցնդեմ, օն և անդր ցիր և ցան արկից ձորոցդ և դաշտացդ։ Եւ եղև բան հպարտութեան նորա բեկումն նմին։... Եւ զօրքն Պարսից զկնի փախստէիցն Հայոց անցեալ երթային, յորոց և արս բազումս սպանին ի թուլացեալ մեղկացելոցն։ Բայց զօրավարին Հայոց Վահանայ հանդերձ իւրովք գործակցօքն զգործ քաջութեան վճարեալ՝ երթայր այնուհետև անհոգս, որպէս թևակից զօրուն Պարսից. և գունդք ամենայն զօրացն Տապհոյ և հայել ի նոսա լոկ ոչ իշխէին։ Քանզի այնպէս արկեալ էր Աստուծոյ զահ և զերկիւղ զօրավարին Հայոց Վահանայ ի վերայ զօրացն Պարսից՝ զի կարծէին թէ ի հայեցուածէ լոկ առնն Մամիկոնենի և յարանցն որ ընդ նմայն էին՝ չզերծանիցին առանց վտանգի։ Բայց յուխտապահ զօրացելոց արանցն որք ընդ զօրավարին Հայոց Վահանայ՝ յարձակեալք նահատակեցան ի ժամուն երանելին Քոնթ Առաւենեան, և երանելին Ներս Ցովսեպեան, և երանելին Ատգէն սեպուհն Վանանդացի, և երանելին Ղերպարգոս, որ էր ազգաւ յոյն։ Իսկ Սիւնեաց զօրուն թափեալ զփորոտի իշխանին իւրեանց յերկիր, վասն կարի զազրապէս հոտելոյն, և պատեալ եղեգամբ՝ առեալ գնացին ազգականք իւր և ծառայք յաշխարհն Սիւնեաց։ Եւ զայն տեսեալ Սիւնեաց այրուձիոյն՝ քամակակոտոր խորտակմամբ ցրուեալ և քայքայեալք ընդ այլ և այլ ճանապարհս գնացին յիւրաքանչիւր տեղիս» (Փարպ. ԶԲ, ԶԳ.)։

**32.** Այս մեծ հարուածէն ետքը՝ Տապուհ թողլով այլ ևս պնդել զկնի Վահանայ՝ կ՚երթայ ի Բասեն, և մինչ վարանեալ կը խորհէր, թէ ինչ հնար գտնէ—քանզի Գդիհոնիւ բեկաւ աջ բազուկ նորա—յանկարծ գալով դեսպան՝ կը բերէ զլուր պարտութեանն Պարսից ի Հեփթաղս և Պերոզի մահուան.—«Տապուհ, պարսիկ գնդին զօրագլուխն, իբրև տեսանէր զբեկումն Սիւնի գնդին և զահաւոր զօրութիւն հակառակորդին իւրոյ Վահանայ՝ սրտմտեալ զարհուրէր. եթէ զինչ առնիցէ՝ չիմանայր, զի ասէր, Թէ ի կենդանութեանն այնպիսի առնն որպէս Գդիհոն էր, և այրընտիր գընդաւ յաղթեալ գտաւ նա և որ ընդ նմայն էին, յաւելուածով և այսոցիկ ևս որ աստ են առ իս, և համարեալ առ ոչինչ Վահանայ՝ երեսուն միայն արամբք ի վերայ երից և չորից հազարաց յարձակեալ խորտակեաց զամենեցունց զսիրտս, և պատառեալ վեր ի վայր զանչափ զօրաց բազմութիւն զայնպիսի մեծամեծս գործեաց

վնասս. իսկ այժմ որպէսզի վստահութեամբ կարասցուք զայնպիսի քաջորերոյ ունել զդէմ սակաւացեալքս։ Այլ և զայս զմտաւ ածեալ երկնչիմ, մի գուցէ առաքեալ ի մերձակայ սահմանակից տեղեաց առ հայ մարդիկ գաւառին Անձևայ և Ծոփաց, և Հաշտենից, և առեալ ի նոցանէ օգնականս որպէս յիւրոց ազգականաց՝ չկարիցեմք և զապրուստն անձանց որ մնացեալքս եմք՝ գտանել այնուհետև։ Այլ եկայք փութասցուք երթալ յօստանն Հայոց, և ճեպով գնացանօք զգացուսցուք արքայից արքայի։ Վասն զի և նոքա, եթէ վճարեալ է զիւր գործն՝ ժամ է յօստանն դառնալոյ։ Եւ այնուհետև բուռն գնդաւ և կամ իւր իսկ գլխով՝ նա եկեսցէ որպէս և գտանէ առնել գլուխ Հայոց գործոյս… Զայս ամենայն զմտաւ ածեալ այսպէս Շապհոյ՝ չուէր վաղիւն ի գաւառն Բասենոյ, և եկեալ ի գեւղն զոր Ալվարն կոչեն, մինչդեռ տարակուսեալ տանջէին խորհուրդք զնա յերկիւղէ զօրավարին Հայոց Վահանայ՝ եկեալ հասանէր յանկարծակի դեսպան ի Պարսից, ունելով գոյժ չարաչար և նամականի բազում, զորս գրէին առ Շապուհ Պարսից աւագաբեարն, և Հայք իւրաքանչիւր առ իւր ազգականս և սիրելիս, որք յանթիւ սաստիկ կոտորածէ Հեփթաղին զերծեալք էին» (ՁԴ, ՁԵ.)։

Շապուհ առնլով նամակը՝ կը մնայ անզգայ. ապա ուշաբերեալ կը կոչէ դեսպանը, որ կը պատմէ նմա մանր, թէ, ինչպէս Պերոզ ամբարտաւանութեամբ յանխորհուրդս երթալով Հեփթաղաց, այն է Սպիտակ Հոնաց վրայ հակառակ դաշանց՝ չարաչար կը յաղթուի և կ'սպանուի իւրովքն.—«Ընկալեալ Շապհոյ զնամականին և հասեալ ի վերայ ծանր և կարևոր չարեացն՝ ի մեծ տրտմութիւնս ապշութեան ընկղմեալ զարհուրէր. և կացեալ ժամանակս ինչ անխօս իբրև թալացեալ՝ ոչինչ բան կարէր հարցանել զայրն թղթաբեր և ոչ անձին զգալ։ Եւ զգացեալ յետ բազում ժամուց, որպէս յապշութենէ և ի թմրութենէ՝ կոչեցեալ զայրն հարցանէր, թէ ո՞րպէս կամ զիա՞րդ սպառսպուռ եհաս այնպիսի վախճան և կործանումն Արեաց աշխարհին, կամ ո՛ կարացեալ զերծանել եբեր զհամբաւ կոտորածին զայնչափ անթիւ բազմութեան զօրացն, և կամ զիա՞րդ արդեօք մեռաւ աստուածանման տէրն Պերոզ և կամ որպիսի մահու։ Եւ դեսպանին պատասխանի արարեալ ասէր, թէ Քո հարցանելդ պատշաճ և ի դէպ է, որպէս ամենայն մարդ, որ կամի լսել ի պատգամաւորաց զիրս պիտոյից և զտեղեկութիւնն. բայց ինձ կարի ծանր է խօսել զվատ բանս և տալ զրոյց զայնպիսի չար աղէտից ի զերծելոց փախստէիցն, մանաւանդ յորում ոք այնչափ վնասուց և բեկման չէ պատճառ՝ բայց ինքն աստուածանման տէրն Արեաց Պերոզ… Նախ՝ մինչդեռ այգրէն իսկ էր ի Վրկանէ Պերոզ.

և զօրաժողով արարեալ յամենայն կողմանս կամէր խաղալ ի վերայ Հեփթաղին՝ խորհեալ առանձին միայն, ոչ զոք հարցանէր, բայց զայս ևեթ գիտէր ամենայն գնդին մարդ, եթէ ընդ Հեփթաղին կամի կռուել։ Լքեալ և սրտաբեկեալ ամենայն մարդ՝ տեսանել լոկ սիրով չկարէր զայր հեփթաղ, և կամ զանունն լոկ լսել, թող թէ կռուով ընդդէմ երթալ, յիշելով զահ և զպաշարումն որ անցին ընդ տէրն Արեաց և ընդ Պարսիկս։ Յայտնի աղաղակէր ամենայն բերան. Եթէ մահապարտ եմք, և արքայից արքայ զմեզ սպանանել կամի՝ ինքն իսկ աստէն սուր ի վերայ եդեալ հրամայեսցէ սպանանել, քան եթէ սրով Հեփթաղին տալ կորուսանել զԱրիս, որ գործ մինչև ցյաւիտեանս զանձն և զԱրեաց աշխարհ վատանուն առնէ։ Զայսն բանս և ամենայն աւագանի դրանն խօսէին առ միմեանս հանապազ, և մանաւանդ ասպարապետն Արեաց Վահրամ, որ և համարձակապէս յականջս Պերոզի բազում անգամ հասուցեալ հրապարակաւ բողոքէր։ Եւ նա ոչ լսէր ումեք և ոչ յիշէր բնաւ զառաջին թշնամանս խայտառականաց իւրոց, զոր եդիտ անձամբ և ամենայն Արեօք ի Հեփթաղէ։ Դիմեալ ի վերայ այնչափ բազմութեամբ Արեօք և Անարեօք՝ գնաց, որ իբրև զմահապարտ ի մահ, և ոչ իբրև պատերազմողս ի կռուել երթային։ Տայքն զրոյց ապրեալք անտի և զայն ևս, թէ յորժամ մօտ հասաք, անդր՝ առաքեաց առ Պերոզ Հեփթաղն, թէ Քո ընդ իս ուխտ է երդմամբ գրով և կնքով՝ թէ չկռուիմ ընդ քեզ. և սահմանս կարգեցաք, զորովք, չիշխեսցուք թշնամութեամբ անցանել առ միմեանս. արդ յիշեա զուխտն և ըզնեղութեան պաշարումնն, յորմէ ողորմեալ իմ արձակեցի զքեզ. և ոչ սպանի, և ի բաց դարձիր խաղաղութեամբ և մի մեռանիր։ Ապա թէ ոչ լսես բանից իմոց՝ գիտեա զի կորուսանեմ զքեզ և զամենայն զանպիտան բազմութիւնդ յոր դու յուսացեալ ես, քանզի ես և արդարութիւն ի միասին կռուիմք, և դու և ուխտազանցութեանն ստութիւն ի միասին էք, և արդ դու ինձ զիարդ կարես յաղթել։ Եւ լուեալ Արեաց զբանս Հեփթաղին՝ ասէին ցՊերոզ, թէ նա արդար է, և մեք սուտ կռուիմք։ Եւ Պերոզի սաստկապէս զայրացեալ Արեաց աւագանոյն՝ պատասխանի արար հպարտութեամբ Հեփթաղին և ասէ, թէ Զայս բազմութիւն գնդին զոր դուք տեսանէք՝ կիսովս ընդ ձեզ կռուիմ և կորուսանեմ, և կիսովս զհող տեղեացդ ուր դու լինիս՝ կրել տամ, որ ի ծովն, որ ի փոսն զոր հատին՝ լնում։ Եւ հասեալք առ միմեանս և հարեալք ի դիմի՝ կորեաւ ինքն ամենայն որդւովք և աշխարհաւ։ Եւ զերծեալք ի կործանմանէն. արք սակաւ, և հասեալք ի Վըկան՝ պատմեցին ամենեցուն զամենայն անցս չարեացս այսոցիկ. և զամենայն արս աւագս և զայլ մարդիկն որ ի Վրկանին էին՝

*փախուցին յԱսորեստան։ Դեսպան արարեալ ի Վիրս առ Հազարաւուխտ, և զիս այսր առ ձեզ արձակեցին, փութալ ժողովել զձեզ առ միմեանս և գտանել զհնարս՝ որով լինիցին ի միջի և՛ ձեր անձինք, և՛ Արեաց աշխարհ»* (Փարպ. ՁԵ.)։

**33.** *Տապուհ պատասխան տալով դեսպանին, թէ ինքն արդէն կը խորհէր պատճառ հրաժարելու այն գործէն՝ կը պատմէ նմա համառօտիւ Վահանայ և ընկերներուն աներկիւղ քաջութիւնը, թէ ինչպէս իբր երեսուն մարդով շարժեցին երեք հազարէ կազմեալ բանակ մի, և սպանին զհսկայակերպն Գդիհոն, խոստովանելով ևս, թէ Պերոզի անմտութիւնն եղաւ պատճառ սարտուցանելու այնպիսի քաջ մարդիկ և պիտանի երկիր մի որպիսի էին Հայք, և անկանի ի ճանապարհ երթալ ի Պարս, յետ յանձնելոյ զկանայս Կամսարականաց Բողբերդի կուսակալին։ Իսկ Վահան գալով Վաղարշապատ՝ կը կատարէ զուխտ իւր, կը նորոգէ զկաթողիկէն, և ապա կ'երթայ ի Դուին, յայնժամու մայրաքաղաքն Հայոց, սպասել վախճանին.—«Լուեալ զայս ամենայն բանս Տապհոյ ի դեսպանէն՝ պատասխանի տուեալ ասաց, թէ Ես և գունդս զոր այժմ դու ընդ իս տեսանես, թէպէտև այդ լուր չարեաց չէր հասեալ՝ խնդրեաք պատճառս զերծանելոյ ի գործոյս յորում եմքս։ Վասն զի այնպէս զարհուրեցուցեալ ապշեցոյց զմեզ ապստամբն Վահան, որոյ իրք և արարածք չեն որպէս զայսր ժամանակի մարդկան զոր մեր տեսեալ և գիտեմք, այլ իբրև զառաջին քաջացն, զոր ի վէպսն պատմեն և լսեմք։ Քանզի թող զայլ ժամանակաց զնորա և զարանցն որ ընդ նմա են յիշել զգործս և զաներկիւղութիւն, զոր իմ և այլ աւագորերոյ տեսեալ է՝ այլ յառաջ քան զաւուրս տասն, թուով երեսուն արամբ ոչ միայն ի վերայ այսր բազմութեան որ այժմ աստ են և տեսանես, յարձակեալ կռուեցաւ, այլ և իշխանն Սիւնեաց Գդիհոն իւր գաւառին այրընտիր ձիով աստ էր. և Վահան դէմ յանդիման այն երեսուն արամբ յարձակեալ ի վերայ և նման արծուոյ յորում ժամու ի կաքաւուց երամ սլանայցէ, իցէ զոր սպանանիցէ և զայլ ամենեսեան ընդ ծերպս և ընդ սորս վիմաց ցրուիցէ, ըստ նմին օրինակի այսք անդր զայսչափ բազմութիւն զօրացն արկեալ վեր ի վայր ցրուեցին, սպանին և զսկայանման զայրն զԳդիհոնն, և զայլ բազումս կոտորեալ ի գնդէն՝ գնային ինքեանք անվնասք, չերկուցեալ բնաւ յումեքէ։ Եւ արդ ո՞չ անճանաչող և արհամարհոտ հպարտութեանն Պերոզի հանեալ է զայնպիսի արեար և զայսպիսի մեծ և զօգտակար զաշխարհ յԱրեաց ծառայութենէ։ Եթէ այժմ զայնպիսի այր, որպէս և յառաջագոյն գիտէի և այժմ քաջագոյն ևս գիտացի, և զնորուն զընկերս որ առ նմա են, և մանաւանդ*

զերբիս եղբարսն որ ի Կամսարականն տոհմէ են, հնարէր նուաճել և մեր առնել՝ որպէս մեծ մասն մխիթարութեան համարէր հասելոյ ծանր բեկման ի վերայ Արեաց աշխարհին։ Եւ խօսեցեալ զայս Միհրանեանն Տաչհոյ և դեսպանին ընդ միմեանս՝ հրաման տային զօրուն, և ըստ կարի օր ըստ օրէ չուելոյն ճեպեալք հասանէին յաշխարհն Պարսից։ Բայց զկանայս Կամսարականացն թողեալ Տաչհոյ անդէն ի Բողբերդի՝ յանձն առնէր բերդակալին, ստէպ պատուիրելով՝ բազում զգուշութեամբ պահել և առաւելապէս սրբութեամբ ըստ օրինի քրիստոնէից կարգի։... Եւ զօրավարն Հայոց Վահան Մամիկոնեան եկեալ հասանէր այնուհետև ի Վաղարշապատ քաղաք, հանդերձ աննենգ ուխտապահ նախարարօքն Հայոց, կատարէր զսովորական ուխտս և զպատարագս ի սուրբ եկեղեցւոջն կաթողիկէի, զոր նորոգեաց մեծապայծառ շքեղութեամբ, զհնացեալ գործ նախնեացն իւրոց, և զտեղիս վկայարանացն, նախ հաստուցանելով զաղքատաց զպէտս, և ապա ինքեանք ուրախացեալք զուարճանային խնդութեամբ։ Եւ անտի չուեալ՝ յոստանն ի Դուին մտանէին, և դադարեալ անդ աւուրս՝ սպասէին և ակն ունէին հրամանի առաջնորդութեանն Քրիստոսի» (Փարպ. ՁԶ.)

Հազարաւուխտ ևս որ էր ի Վիրս, առնլով նոյն լուրը՝ կ'երթայ փութով ի Պարսս։ Լինի անդ ժողով մեծ, ուր միաբան հաւանութեամբ աւագանւոյն կ'ընտրուի թագաւոր եղբայրն Պերոզի Վաղարշ, իբրև այր բարերար և հեզ։ Հազարաւուխտ և ապա Միհրան կը խօսին գովութեամբ զՀայոց, մանաւանդ զՎահանայ, և իսկոյն կ'որոշուի արձակել զՆիխոր Վշնասպդատ՝ քաղցրութեամբ շահել զՎահան և զՀայս.—«Եւ լուեալ Հազարաւուխտոյ յաշխարհին Վրաց զսպանումն Պերոզի և զանթիւ կոտորած բազմութեանն Պարսից՝ զարհուրեալ տարակուսէր յանձն իւր գնալ վաղվաղակի յերկիրն Պարսից։ Եւ հասեալ ի դուռն՝ ժողովէին առ նմա մնացորդք Արեաց աւագանւոյն։

**34.** «Խորհուրդ ի մէջ առեալ, թէ զո՞ արժանի թագաւորութեան նմանեցուցանել կարասցեն, և խորհեալ զայս ի բազում աւուրս՝ հաստատէին միաբանութեամբ զիրսն ի վերայ Վաղարշու, որ էր եղբայր թագաւորին Պերոզի, որպէս ի վերայ առն բարերարի և հեզոյ... զոր բազմեցուցին ի գահու թագաւորութեանն Պարսից։ Խորհուրդ ի մէջ առեալ այնուհետև Հազարաւուխտոյ միաբանութեամբ աւագանւոյն յերկրորդումն աւուր թագաւորութեանն Վաղարշու՝ խօսէր առաջի թագաւորին և ասէր. Պերոզ արքայից արքայ, ձեր եղբայր, որպէս և դուք իսկ գիտէք՝ բուռն էր... բազումք յարհամարհոտ բարուց նորա փախուցեալք յԱրեաց թագաւո-

րութենէ՝ ոչ սակաւ մասամբ վնասեցին Արեաց աշխարհին։ Եւ նախ
առաջին զմեծ աշխարհն Հայոց, որ այսօր ի ձեր ծառայութենէ ի
բաց կացեալ է, և զայլն որ զաշխարհն ի բաց ունի ի ձէնջ՝ Պերոզ
կորուսեալ եհան յԱրեաց ծառայութենէ, և թէ որչափ ինչ
յայնմ առնէ վնաս աշխարհին եղև՝ գիտեն ամենեքեան, բայց թուի
թէ և ձեր լուեալ է զամենայն և տեղեակ էք։ Բայց աւելի Նապուհ
Միհրան զոր դուք կարգեցէք՝ առ զնորա քաջութեան փորձ և ըղ-
խրատու, և թէ հարցանէք և լսել կամիք՝ դոյն իսկ ասէ ձեզ։ Թա-
գաւորն Վաղարշ հարցանէ զՄիհրան Նապուհ զգործոյն Հայոց, թէ
Զինչ կարացեր գործել գործ յաշխարհին Հայոց, և Վահանայ զինչ
միտք են և ույժ, և որպէս կարաց այսքան ամս զգէմ ունել Արեացս։
Եւ Միհրանայ պատասխանի տուեալ ասաց, թէ Արանց քաջ, զկռիւն
զոր Հազարաւուխտ մեօք հանդերձ ընդ Վահանայ արար... և յոր-
ժամ Հազարաւուխտ ի Վիրս գնաց և զիս անդէն զօրագլուխ եթող
գնդին՝ յայնմհետէ զինչ Վահան զմեզ աշխատ կալաւ կարի սակաւ
արամբք, երբեմն թէ հարիւրօք ասեմ՝ չստեմ, և վկայեն ինձ գըն-
դիս մերոյ աւագորեար որ անդ էին և այժմ աստ են՝ կարի ծանր
է ասել. բայց զմիոյ աւուր գործն թէ յիշեմ... երկիւղ գործոյն
չելանէ ի մտաց. զի և ոչինչ այլ իմիք նման էին այն նորոգ իրք՝
բայց եթէ յորժամ ժիր մշակք քաջ սուր մանգաղաւ և գերանդեաւ
զխոտ հարկանիցեն, և բազում որայս մօտ ի մօտ առ միմեանս
կուտեալ թողուցուն, և ինքեանք անհոգ յիւրաքանչիւր տունս եր-
թայցեն. ստոյգ ըստ այնմ օրինակի յարձակեալք այնքան արամբք
հերձին վեր ի վայր զբովանդակ գունդն, և շատ լաւ որեար կոտո-
րեցին։ Եւ զահաւոր այրն զԳդիհոն զՍիւնեաց տէրն սպանին։ Ցիմ
միտս այսպէս ասէի. թէ լոկ Գդիհոն միայն ինքն տասն արամբ
յիւր գնդէն պատահէր այնչափ առն՝ այն միայն վճարէր. և զայն-
պիսի այր և զայլ ականաւոր և քաջ արս ի պարսիկ մարդկանէ
հանին ընդ սուր, և ինքեանք ոչինչ խոյս տուեալ ի բաց փարե-
ցին զձիանս իւրեանց, այլ մօտ ի մեզ թեւակից երթային յանհոգս
ի բազում ժամս։... Վասն որոյ թէպէտև առաջի ձեր յանգգնու-
թիւն են բանքս իմ՝ սակայն յաղագս կարծեաց ժամուս համարձա-
կիմ ասել, զի եթէ այրն Վահան և այլ որեարն որ ընդ նմա են,
այսօր խաղաղութեամբ ի ձեր ծառայութեան էին՝ մեծ մասն բար
ւոյ և մխիթարութեան կարեւոր հասելոյ տրտմութեանս մերոյ հա-
մարէի զիրսն։ Զի յորժամ Հայք այնպիսի որեարով մեր էին՝ Վիրք
և Աղուանք չիշխէին բնաւ թիւրել զանձինս և այլազգագոյնս ինչ
խորհել։ Եւ լուեալ զայսպիսի բանս թագաւորին Վաղարշու ի Մի-
հրանայ և Հազարաւուխտոյ, և այլ ամենայն Արեաց աւագանւոյն՝

միտքան ամենեքեան զասացեալսն ի Միհրանայ գովէին։... Եւ վաղվաղակի փութով զՆիխոր Վշնասպդատ, զայր հեզ, մտացի և աշխարհաշէն, բազում այրընտիր որամբք ի Հայս արձակէին։ Պատուիրէր նմա ինքն իսկ Թագաւորն, այլ և՛ս աւելի հոգաբարձութեամբ Հազարաւուխտ և այլ դրանն աւագանին, թէ Երթ ի Հայս, և որ ինչ օրինակաւ և է՝ ամենայն քաղցրութեամբ և սիրով ըստ կամացն Վահանայ և Նորուն ընկերացն նուաճեալ զորեարն՝ յԱրեաց ծառայութիւն ած։ Բայց զգոյշ լեր նախ ժողովել առ քեզ զայրուձին Ատրպատականի որ մօտ ի Հայս իցեն, և զայրուձին Հեր և Զարաւանդ գաւառի. մի գուցէ յղեալ քո առ Վահան, և Նա պատճառանօք քաղցր խօսելով ընդ քեզ՝ խաբիցէ զքեզ և վնաս ինչ առնիցէ։... Եւ խօսեալ զայս ամենայն բանս տեառն Արեաց Վաղարշու և ամենայն աւագանւոյն ընդ Վշնասպդատայ Նիխորոյ և հրաժարեալ զնա՝ արձակեցին ի Հայս» (Փարպ. ՁԷ, ՁԸ.)։

**35.** Նիխոր կու գայ, այլ չհամարձակելով մտնել ի Հայս՝ կը մնայ ի Հեր. պատգամաւորօք կ'իմացունէ Վահանայ, թէ եկած է խօսել ընդ նմա իբրև միջնորդ։ Վահան խորհրդով իւր հաւատարիմ Նախարարաց՝ կ'ընդունի միջնորդութիւնը, և կ'առաջարկէ երեք պայման, և կը խոստանայ դադարեցուցանել ապստամբութիւնը՝ եթէ պայմանները ընդունուին. կը ղրկէ պատգամաւորներն պատուով առ Նիխոր՝ դնելով իւր կողմանէ ևս հինգ հոգի.—«Եկեալ Նիխոր յաշխարհն Հայոց՝ ոչ իշխեաց միջամտել ի Հայոց տեղիս, այլ դադարեալ ի գաւառին որ կոչէր Հեր, ի գեւղն որում անուն էր Նաւարսակ, առաքեաց պատգամաւորս առ Մամիկոնեանն Վահան զՇապուհ խորհրդեան դպիր և զՄիհրվշնասպ Ծուարշացի, որովք տայր գիտել նմա զիրս գալոյն իւրոյ ի Հայս, և թէ հրովարտակ ունիմ առ ձեզ ի Թագաւորէն Վաղարշու՝ նուաճել զձեզ խաղաղութեամբ, և յամենայն աւագարերոյ որ յԱրիս են՝ պատգամ ունիմ առ ձեզ. արդ՝ արիք, եկայք և լուարուք, և որպէս է ձեզ հաճոյ և խորհիք՝ ընտրեցէք որ բարին է։ Եւ տեսեալ Վահանայ Մամիկոնէի զպատգամաւորս Նիխորոյ, և լուեալ զայս ամենայն բանս պատգամին ի նոցանէն՝ ժողովէր առ ինքն զամենայն հաւատարիմ Նախարարս և զազատս և զամենայն զօրավարս այրուձիոյ. հրամայէր եկելոցն ի Նիխորոյ՝ ասել առաջի ամենեցուն զբանս Թագաւորին Վաղարշու և զբանս ամենայն Արեաց աւագանւոյն։ Եւ տուեալ լսել Մամիկոնենին Վահանայ ամենայն հայորերոյն միահամուռ զպատգամն Նիխորոյ՝ ասէր ցպատգամաւորսն Պարսից՝ առ վաղիւն առնել նոցա պատասխանի։ Ժողովեալ ի վաղիւն ամենայն հայորերոյն առ Մամիկոնեանն Վահան, և խորհեալ նախ ընդ մի-

մեանս զվաղնջուց զպէտս և զխնդիր իրացն, եկեալ և պատգամաւորացն Նիխորոյ յատեանն՝ սկսաւ խօսել Մամիկոնեանն և տանել պատասխանի բանիցն Նիխորոյ։ Վասն մերոյ ապստամբութեան և յայսպիսի կարևոր և մահաբեր գործ տալոյ զանձինս՝ բազում են բանք և կարևոր, և չէ հնար գրով վճարել և կամ պատգամաւ, բայց եթէ յանդիման խօսել ընդ նմա որ Արեաց տէրն է, և ընդ ձեզ որ դրանն աւագանի էք։ Բայց երիս բանս ասեմ ձեզ. եթէ այս երից բանից պատասխանի առնէ ինձ, որպէս ես կամիմ և ամենեքեան սոքա որ աստէն իսկ են, և կարէ զայս երիս խնդիրս տալ մեզ գրով և կնքով՝ զամենայն զոր ինչ ասէք զպատեհն և զարժանն՝ առնեմք, և բանի ձերում լսեմք՝ որպէս և նախնիքն մեր լուան։... Եթէ յանձն առցեն Պարսիկք թողացուցանել մեզ զայս երիս իրս՝ ծառայեսցուք նոցա որպէս զբնիկ և զհաւատարիմ ծառայս. եթէ ոչ հաւանին յանձն առնուլ և խոստանան՝ ելցուք ըստ աշխարհ և կորիցուք և խնդութեամբ մեռցուք, այլ պարսկի առ երկիր ոչ պագցուք։ Նախ և առաջին խնդիր կարևոր և պիտանի այս է, եթէ զհայրենի և զբնիկ օրէնս մեր ի բաց թողուք, և զհայլ մոգ ոչ առնէք, և ումեք յաղագս մոգութեան գահ և պատիւ չտայք, և զկրակարանն յաշխարհէս Հայոց ի բաց տանիք... և քրիստոնեայ մարդկան և քահանայից զկարգ և զպաշտօն քրիստոնէութեան համարձակութեամբ և աներկիւղ տայք պաշտել ում և կամին։ Երկրորդ խնդիրն այս է, թէ զմարդ ոչ իշխանաբար ճանաչէք, այլ իրաւաբար գիտել զլաւն և զվատթարն, ընտրել զպիտանին և զանպիտանն, իմանալ զտոհմիկն և զանտոհմիկն, սիրել ըզվաստակաւորն և ատել զանվաստակն, ունել ի մօտ զիմաստունս և խորհուրդս առնել, և զանմիտն ոչ մօտեցուցանել, այլ և ի հրապարակէ ևս հալածել։ Երրորդ խնդիր մեր այս է. որ տէրն է Արեաց աշխարհի՝ ինքն տեսցէ իւրովք աչօք, և ինքն լուիցէ իւրովք ականջօք, և ինքն գիտասցէ զմարդ լաւ և զաննշան, և ոչ այլոյ բերանով խօսեսցի զպէտսն։... Թագաւոր որ իւրովք առողջ աչօքն հայի և աննախանձ լսողութեամբ լսէ և արդար բանիւ խօսի ընդ իւր ծառայս՝ կենդանացեալ ծառայքն չյագին վաստակով, այլ յաւելեալ ի վաստակն՝ օր քան զօր աճեցուցանել ջանան զբարին. այսպէս և՛ աշխարհ շինի, և՛ տէրն շքեղացեալ պայծառանայ հանապազ։... Այլ բանք որ ինչ են, թէ ինձ լինի գալ՝ ինձէն իսկ խօսիմ ընդ նմա։ Եւ խօսեցեալ զայս ամենայն բանս Մամիկոնեանին Վահանայ ընդ Շապհոյ խորհրդեան դպրի և ընդ Միհրվրշնասպայ Ծուարշացւոյ՝ ուղարկեաց զնոսա. առաքեաց և ընդ պատգամաւորսն Նիխորոյ յիւր ուխտակցացն զՅաշկուր Արծրունի և զՍա-

հակ Կամսարականն, զերանելոյ զԱրշաւրայ զորդի, և զՎասավուրա Հարքային և զԱռաւան Աղբերակացի և զՊաճօկ ի Մարդպետական դնդէն։ Զօգան նոքա ի գաւառն Հեր առ Նիխոր։ Որոյ տեսեալ զհայերն որ չոգան առ նա ի Մամիկոնեանն Վահանայ՝ ընկալաւ զնոսա բազում գոհութեամբ. և հրաման տուեալ ընտրեացն՝ յիշէր հանապազ ըստ ամենայն բաժակի զքաջ Մամիկոնեանն Վահան և կատարեալ զընտրեսն զնային յիւրաքանչիւր վանս։ Ընդ առաւօտն ժողովեցան ամենայն ատեանն Պարսկաց առաջի Նիխորոյ, և պատգամաւորքն որ ի Նիխորոյ առ Մամիկոնեանն Վահան երթեալ էին, Ծապուհ և Միհրվշնասպն, և հայ նախարարքն և այլ արքն որ ի Մամիկոնենէն Վահանայ։ Ետուն զպատգամն Մամիկոնեանն Վահանայ Ծապուհ և Միհրվշնասպ առաջի ամենայն ատենին յայտնապէս։ Եւ լուեալ Նիխորոյ զամենայն զբանսն և զխօսս Մամիկոնենին Վահանայ՝ ասաց առաջի ամենեցուն, թէ Ամենայն բանքդ այդ և պատգամդ զոր յղեալ է Վահանայ՝ են արդարև աստուածոց արժանի... բայց տացեն աստուածքն ինձ տեսանել զօրն, յորում լիմ ձեռն նուաճեալ՝ Արեաց ի ծառայութիւն հնազանդիխ։

Այսպէս խօսելով Նիխոր բոլոր ատենին առջև՝ կը ղրկէ միւս անգամ իւր պատգամաւորներն նամակաւ՝ Վահանայ կողմէն ղըրկուած նախարարաց հետ, և կը հրաւիրէ զՎահան գալ խօսել անձամբ։ Վահան կ'երթայ առ Նիխոր, յառաջագոյն խնդրելով պատանդ յապահովութիւն իւր.—«Խօսեցաւ զայս այսպէս Նիխոր առաջի ամենայն ատենին, և լուեալ նախարարացն Հայոց և այլ արանց որ եկեալ էին ի Վահանայ Մամիկոնենէ՝ տային փառս Աստուծոյ, յորոյ ձեռս են սիրտք իշխանաց, և որպէս ինքն կամի՝ տայ թարգմանել նոցա։ Կոչէր այնուհետև վաղվաղակի Նիխոր զնոյն պատգամաւորս, զԾապուհ խորհրդեան դպիր և զՄիհրվշնասպ Ճուարշացի, և գրէր նամակ առ Մամիկոնեանն Վահան... նաև զնախարարսն որ եկեալ էին ի Մամիկոնենէն Վահանայ արձակէր ընդ պատգամաւորս իւր, մեծաւ պատուիրելով յանձնեալ նոցա վաղվաղակի և անյապաղ՝ ածել զՄամիկոնեանն Վահան։... Հասեալ պատգամաւորացն Նիխորոյ առ Մամիկոնեանն Վահան՝ մատուցին նմա զնամակն, յորմէ գիտաց թէ լուեալ տեղեկացաւ Նիխոր զամենայն յղեալսն իւր առ նա։... Տեղեկացեալ ծանեաւ և զայն, թէ որպէս խնդութեամբ և սիրով ընկալեալ զնախարարսն մեծարեաց Նիխոր. պատմեցին ևս, թէ կարի և փութով զերթս քո խնդրէ փափաքելով. պատգամաւորքն ևս Նիխորոյ ստիպելով հաւանեցուցանէին նմա երթալ։ Զուեալ այնուհետև զօրավարին Հայոց Վահանայ Մամիկոնենի ամենայն ուխտապահ նախարարօք հանդերձ և այլ բա-

զուժ և կազմ գնդաւ, և եկեալ ի գաւառն որ կոչի Արտազ, ի գեւղն զոր անուանեն Եղինդ՝ դադարէ անդ ինքն և ամենայն գունդքն որ էին ընդ նմա, և առաքէր առ Նիխոր զիւր եկն տալ գիտել նմա, և ասէր ցՆիխոր. Եթէ թուի քեզ գալ 'իմ և տեսանել զքեզ՝ տուր ածել առ իս արս աւագս Արիս յականաւոր տոհմաց, որ եկեալ կացցեն աստ առ իմ որեար, մինչև եկեալ ես տեսից զքեզ, և խօսեցեալ իմ և քո ընդ միմեանս՝ լուիցուք ի միմեանց զոր ինչ ի դէպս թուի մեզ առնել։ Նիխորոյ լուեալ զեկն և զկամս խնդրոյն Մամիկոնենին Վահանայ՝ վաղվաղակի տայր տանել ցԿամսարականն տէրն Շիրակայ Ներսեհն՝ զԲազէ զԱտրպայական Տահաայ, և զՎեհ-նամ զՀայոց հազարապետ, և զՆերսշապուհ զՄիհրանայ զեղբայր, և զհինգ ևս այր այլ աւագ պարսիկս։ Եւ Մամիկոնենին Վահանայ տեսեալ զաւագորեարն զոր առաքեալ էր Նիխորոյ՝ ընդունէր զնո-սա խնդութեամբ, և ի միասին ուրախացեալք զայն օր՝ ի վաղիւն թողոյր զութեսին զնոսա առ իւր հաւատարիմ արս, որոց հրաման տայր պատուել զնոսա արժանաւորապէս և զգուշանալ. և ինքն չուեալ գնդաւ և կազմութեամբ գնայր առ Նիխոր» (Փարպ. Ղ, ՂԱ.)։

**36**. Վահան մերձենալով ի գիւղն ուր էր Նիխոր՝ կ'սկսի հնչեցունել պատերազմի փողերը։ Նիխոր կը գանգատի բերանով պատգամաւորի, և ընդունելով պատշաճ պատասխանը՝ կու գայ ան-ձամբ ընդ առաջ Վահանայ։ Յետ երկուստեք ողջուն՛ և մեծարա-նաց՝ կ'ընդունուին Վահան և իւրքն։ Նիխոր կը կոչէ զՎահան հրապարակաւ և կ'արդարացունէ Հայոց ապստամբութիւնը, Պերոզի վրայ դնելով մեղադրութիւնը.—«Մերձեալք ի գեւղն ուր Նիխոր էր՝ հրամայէր Վահան զօրուն որ ընդ նմա էին՝ վառել ըստ օրինի պատրաստութեան պատերազմի. որք ընդ լսել ի Մամիկոնենէն Վահանայ զհրամանն՝ պատրաստեալք յամենայնի կազմ ցուցանէին նմա զանձինս։ Տայր հրաման Մամիկոնեանն Վահան հնչեցուցանել զփողս պատերազմականս. և ի տեսութենէ փողոցն ձայնից հըն-չեալ երկիրն թնդէր. յորմէ զարհուրեալ որք զօրուն Նիխորոյ՝ կարծէին խաբէութեամբ ի վնասել զնոսա եկն Մամիկոնեանն Վա-հան, և ոչ սիրով ի նուաճումն խաղաղութեան։ Նիխոր առաքեալ ընդ առաջ նորա արս աւագս՝ տայր ասել ցնա, եթէ Ոչ ըստ կար-գի Արեաց առնես դու զայդ, այլ նորոգ իրօք այլ իմն ձեւանաս. յայսմհետէ քեզ կարի զԱրեաց զկարգն պարտ է ունել և հաւա-նել, քանզի ի չուի՝ փողով յԱրեաց բանակ սպարապետն միայն Ա-րեաց իշխէ մտանել, և այլ ոք զայդ համարձակութիւն ի Պարսիկս ոչ ոք իշխէ առնել։ Եւ Մամիկոնենին Վահանայ պատասխանի

տուեալ Նիխորոյ՝ ասէր. Նախ արա զիս Արեաց տեառն ծառայ, ապա և առանց ի քէն իսկ ուսանելոյ թուի թէ և ես իսկ գիտեմ զԱրեաց աշխարհի զկարգ և զարժանն. մի թուեսցի քեզ հաշուել զիս կարի մոռացկոտ, քանզի և ոչ բազում ինչ ամօք գնացեալ եմ ի ձէնջ։ Զայս բանս այսպէս ի ձեռն պատգամաւորի խօսեցեալ Մամիկոնենին Վահանայ ընդ Նիխորոյ՝ ապա ինքն իսկ եկեալ տեսանէր զնա յատենի ժամու, վասն զի ընդ ծագել արեւուն եկն Մամիկոնեանն առ Նիխոր։ Որոյ տեսեալ զնա և զայլ Նախարարսն զուխտակիցսն ընդ նմա՝ ցնծալից ուրախութեամբ բազում ժամս ընկալեալ ի գիրկս իւր ողջունէր զնա, տայր և զողջոյն զԱրեաց տեառնն Վաղարշու և զամենայն աւագանւոյն. մի ըստ միոջէ յանուանէ ողջունէր և զեկեալ Նախարարսն Մամիկոնենին Վահանայ յոյժ սիրով, նոյնպէս և զամենայն արս գնդին, զաւագս և զկրտսերս։ Եւ լուեալ Մամիկոնենին Վահանայ զողջոյն Արեաց տեառնն և զողջոյն ամենեցուն դրանն աւագանւոյն՝ շնորհակալութեամբ գոհանայր երկրպագելով, և խնդալից ուրախութեամբ ընդունէր։ Ապա հրաման տայր Նիխոր զամենայն արս զօրուն Վահանայ ի ներքս թողուլ, նոյնպէս և աւագ պարսիկ որերոյ ի ներքս կալ յատենին հրամայէր։ Իբրև լցեալ էր ամենայն ատեանն արամբք որ ընդ Մամիկոնենին Վահանայ էին, և այլ պարսիկ որերով՝ սկսանէր խօսել Նիխոր ընդ Վահանայ և ասէր. Աշխարհակեցութեան բնութեամբ չես կեցեալ ընդ իս. այլ ի բազում անգամ լսելոյ յաշխարհի մարդկանէ, ի հայոյ և ի պարսկէ, ի լաւ և յիմաստուն որերայ, փորձիւ ևս ի միտ առեալ գիտացաք, զի ի գործ պատերազմի քաջութիւն և իմաստութիւն ունիս։ Զքաջութիւն ցուցեր սակաւ արամբք, և զիմաստութիւն յայտնի արարեր՝ գիտելով զժամ կռուոյն և զտեղի տալոյ, և անվնաս զգունդն ի միջի ունելոյ, և ի միւսում ևս ժամու ևս գործոյ պատրաստ լինել և չերկնչել։... Զմտաւ ածեալ իմ զքո այդպիսի արարուած՝ կարի քաջ ճանաչեմ զամենայն պատասխանիս զոր առնելոց ես դու մեզ ամենայն բանի զոր լսես ի մէնջ. վասն զի թէ զապստամբութենէդ քումմէ հարցանեմք, թէ զի՞արդ իշխեցեր խորհել՝ պատասխանի տուեալ ասես, թէ չճանաչողութիւնն Պերոզի բռնադատեաց զիս մեռանել։... Քանզի քաջէ առն քան զբազում ժամս հարանօք կեալ՝ շատ լաւ է մի օր ծանուցանել զլաւութիւն անձին և մեռանել։... Քո և արանց որ ընդ քեզ եղեն միաբան, առ ոչինչ համարեալ զմահ անձին՝ դիպեցին յերսդ քաջաբար։ Որոց մեռան ի ձէնջ՝ ի Պերոզի ամբարտաւանութենէն խնդրեն աստուածք զարիւնն, և որ ապրեալդ կարացայք եւ ի միջի լինել՝ անպարտք էք և անվնասք։ Որ այժմ Արեաց տէրն է և ա-

մենայն աւազանին՝ զայդ ևեթ խօսին հանապազ և անմխիթար ողբոն և տրտմին, լիշելով զՊերոզի զանհաւան բարսն, զի կորոյս զինքն և զամենայն զԱրեաց աշխարհի զօյժ և զզօրութիւն, և ըզ-թագաւորութիւն մի մեծ և զազատ՝ ի ծառայութիւն ետ Հեփթա-ղին, յորմէ ի դառն ծառայութենէ Արեաց աշխարհն զերծանել ոչ կարէ։ Բայց դու թէ հաւանեալ նուաճիս և ընիկ քո նախնեաց տեառն ծառայութիւն առնես, և որ ինչ վատթարն եղև ի մէնջ և ի ձէնջ՝ մոռանաս և ի բաց թողուս, զայս թէ առնես իմով միջ-նորդութեամբ՝ դու աստէն ի Հայս կաս մինչև թագաւորն կնքէ և տայ բերել առ քեզ հրովարտակ, և եկեալ բարեաւ առ տէրն Ա-րեաց՝ զամենայն որ ինչ բարի և արժան է և՛ քում անձինդ և՛ որում դու կամիս՝ տայ սիրով և կամաւ կատարէ» (Փարպ. ԶԱ.)։

Նիխորոյ այս ողոքական բանից Վահան, ինչպէս վայել էր՝ բազում մեծարանօք և ծանրութեամբ կու տայ պատասխանի, զոր կը դնէ Փարպեցին հաւանականապէս առնլով ի նոյն ինքն ի Վա-հանայ, գէթ ըստ իմաստին։ Վահան կը գովէ նախ զՎաղարշ ըզբ-կելուն համար Նիխորոյ պէս խաղաղարար անձն, և ապա բերելով ի մէջ ապստամբութեան բուն պատճառներն՝ կը խնդրէ կանխաւ ցուցուած երեք պայմաններուն կատարումը, կ՚աղաչէ որ այնու-հետև նայուի արժանաւորութեան, և ներուի ակամայ ապստամբու-թեան յանցուածն. — «Լուեալ Վահանայ զայս բանս Նիխորոյ յառե-նին՝ տայր պատասխանի և ասէր. Աստուծոյ հաշտութիւն յայնժամ է ընդ աշխարհի, յորժամ զիշխանս բարեսէրս տայ, լուածանօքն աշխարհաշէնս, որպէս և այժմս ինձ երևի և ամենեցուն։ Զտէրն Արեաց իմ չև է տեսեալ, բայց կամիմ տեսանել, եթէ տայ ինձ Աստուած միջնորդութեամբ քո... սակայն տեսանեմ զքեզ, զոր խա-ղաղարար և առիթ բարւոյ այնպիսւոյ աշխարհի առաքեալ է. որ-պիսի Հայքն են, և մեր որ աշխարհին մարդիկ եմք։... Իսկ վասն Պերոզի արքայից արքայի բարուցն... շատ իսկ և բաւական լիցի քո տեառն բանն և լիով ասացածն։ Եւ ես գոհանամ զԱստուծոյ, զի զիս անաշխատ պահեցէք. թէպէտ իմ էր այդ ամենայն տրտունջ զՊե-րոզէ, որպէս հանապազ խաբէին զնա և զամենայն Արիս արք ան-պիտանք, հացկատակք, բռնորսողք. խաբեբայք, շաղակրատք, գայ-ին անկանէին ի մոխիրն. և ձեր տուեալ զխնդիրն՝ խնդալով ու-ղարկէիք սպառնալով գահ և պատիւ, և այլոց զտունս և զկեանս և զմեծութիւնս։... Վասնորոյ բարձեալ էին յաշխարհէն Հայոց և կորուսեալ վաստակք և միտք, քաջութիւն, առհմականութիւն և արդարութիւն... և տեառն Արեաց տեսանելով զայն ամենայն... յատենի ևս այպանելով՝ ամենայն վատաց և ի կռուոյ յեմնելոց

զՀայս ածէր օրինակ, նախ Ասորոց, ապա լքելոց, ապա լուծելոց, ապա անդամալուծաց. և որ հացկատակաց ջոկն էր՝ ոչ կորացեալ մտանէր ընդ գետին, նոցա խնդութիւն ևս թուէր այնպիսի լուրն։ Այլ որ մարդն էր և ամօթ կայր ի սրտի, և զայնպիսի բանս յԱրեաց տեառնէն լսէր՝ ոչ միայն մի անգամ և երկիցս եւեթ, այլ թէ և տասն անգամ կեայր և հանապազ զնոյն լսէր՝ տասն անգամ արժանի էր մեռանել։ Վասնորոյ և մեք զայնպիսի ձաղանաց բանս զոր ի վերայ աշխարհիս եդեալ էր Արեաց տեառն՝ լուեալ, թէպէտ ածաք զմտաւ երթալ ըստ աշխարհ ելանել և կորնչել, քանզի ճանաչէաք զԱրեաց ոյժ և զբազութիւն, և չէաք այնքան յիմարք և խելացնորք, թէ մեք Արեաց առաջի, թուով տառապեալ մարդիկ, կարեմք կալ. այլ ածեալ զմտաւ, թէ եթէ յանզգաստից զարհուրեալ գնայցեմք, ստուգապէս ժառանգեմք զանուն վատութեանն որ կայր ի վերայ մեր, թէ մարդիկ որ այնպիսի յետին և անպիտան էին, յիրաւի կորեան և անհետ եղեալ չերևին ուրեք՝—ընտրեցաք նախ ծանուցանել զանձինս, և ապա կամ մեռանել և կամ կորնչել։ Եւ եթէ էաք կացեալ միաբանք և չէաք պառակտեալք և քայքայեալք՝ ծանուցանէաք եկեալցն ի վերայ մեր, թէ արդարև որպէս զԱրք այր եմք, և կամ թէ որպէս զԱսորի։ Եւ արդ՝ մի՛ բազմաբանութեամբ զերագալոյր ձեր միտս ձանձրացուցից, բայց և լռել զօգուտս բազմաց և չասել անհնար է, քանզի յաղագս մեծի աշխարհի են բանքս իմ գիտելի կամ կորստեան, և հարկ է լիով ասել։ Զայն երիս ինչս, զոր ի ձեռն պատգամաւորացն գրեցի առ քեզ՝ շնորհեցէք մեզ գրով և կնքով ի թագաւորէն, մեզ այն խնդիրք միայն պիտին։ Զայլ ինչ պարգևք, շքեղութիւն, որ ոք վաստակել մարթասցէ և տեսանիցէք, հայեսջիք, և ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան հատուսջիք. և մեր բնիկ տեարք էք, և մեք ձեր բնիկ ծառայք եմք. ընկալայք զմեզ սիրով, և ծառայեցուցէք խնամելով. և զյանցումն զոր ի բռնութենէ յանցանել ետուք՝ թողութիւն արարեալ շնորհեցէք մեզ» (Փարպ. ԴԲ.)։

**37.** Վահանայ այս պատասխանին վրայ մեծապէս խնդալով և մխիթարուելով ՛Նիխոր՝ հրամայեց արձակել ատեանը, և յետ անցուցանելոյ այն օրն ի միասին խնջոյիւք և ուրախութեամբ՝ ի վաղիւն կ՚առնու զՎահան առանձինն՝ խօսել ընդ նմա ուրիշ կարևոր իրաց վրայ, ապա գալով յատեան ուր ժողովեալ էին Պարսից աւագանին և նախարարք Հայոց՝ դուրս հանել տուաւ, ասէ Փարպեցին, Վահանայ հակառակորդներն, այն է ուրացողաց դասն, ըստ Փարպեցւոյն։ Վահան բոլոր այն բազմութեան առջև կրկնեց երեք պայմաններն, զորս արդէն նամակաւ և բանիւ խնդրած էր։ Նիխոր

յետ սիրով ունկն դնելոյ՝ խնդրեց ի Վահանայ զայրուձին Հայոց Պերոզի որդւոյն Զարեհի դէմ, որ կամելով թագաւորել՝ կ'ընդդիմանար զօրօք։ Վահան յանձն կ'առնու ուրախութեամբ և հրաժեշտ կու տայ երթալ ի Դուին, որպէս և Նիխոր ի դուռն առ Վաղարշ.— «Նիխորոյ լուեալ զբանս Մամիկոնենին Վահանայ՝ մեծապէս խընդալից սրտիւ ուրախացեալ ասաց առաջի ատենին. Զարտմութիւն մեծ բեկման Արեաց աշխարհին որ եհաս, և զթանձրամած խաւարն որ եհաս և մածեալ նստէր ի վերայ սրտիս՝ համարձակապէս և արդար խօսք Վահանայ փարատեալ ուրախացուցին զիս։ Հրամայեաց արձակել զատեանն. Որ ինչ, ասէ, պէտք են ինձ և Վահանայ այլ ևս բանից՝ խօսիմք օր ըստ օրէ, և յաւուրս քանի մի ուրախանամք առ միմեանս։ Եւ այն օր հրամայէր Նիխոր Վահանայ առ նմա ուրախանալ ամենայն նախարարօքն և բովանդակ գնդաւն որ ընդ նմա էին։ Բայց զուխտանենգսն ի Հայոց և զուրացողսն հանեին արտաքոյ ընթրեացն ամօթալից։ Եւ ուրախացեալք այն օր ըստ օրինի մեծապէս ընթրեաց, և հրաժարեալք ի Նիխորոյ՝ գնացին հանգչել ի վանս իւրաքանչիւր։ Ի վաղիւ անդր ժողովեալ ամենայն բազմութիւն մարդկան ի հրապարակն՝ հրաման տայր Նիխոր, մինչդեռ ինքն առանձինն էր՝ զՄամիկոնեանն Վահան տանել ի ներքս ի սենեակ։ Եւ խօսեցեալ ընդ նմա միայն ընդ միայն ժամս բազումս զպէտս կարևոր իրաց աշխարհին՝ գային երկոքեան ի միասին ի տուն ատենին։ Հրաման տայր Նիխոր ամենայն եկելոցն ընդ Մամիկոնենին Վահանայ, նախարարաց և ռամկաց, մտանել յատեանն առ նոսա, և արանց պարսիկ աւագաց գալ առ նոսա յատեանն։ Բայց զարսն որ զինքեանս հաւատարիմս Պարսկացն կացուցանէին՝ հրաման առեալ նուիրակացն՝ և ոչ ի դուրսն մտանել տային։ Երկրորդեալ յատենին զնոյն բանս Մամիկոնենին Վահանայ՝ սկսանէր միւսանգամ խօսել ընդ Նիխորոյ և ասէր. Զիւրաքանչիւր ուրուք խնդիր և զօգուտ դուք որ այժմ աստ էք, նախարարք և ազատք և այլք յոստանիկ մարդկանէ և յայրուձիոյ, ճանաչէք, և գիտէք հատուցանել զարժանն. բայց զոր ինչ ես և որ ընդ իս ուխտապահ նախարարքն են՝ խնդրեցաք ի քէն պատգամաւորօք և գրովք, զոր և երեկ և այսօր դէմ յանդիման խօսեցայ ընդ քեզ, և դու հրամանաւ ամենայն աւագանւոյ դրանն գրով և կնքով խոստացար տալ մեզ, առանց որոյ անհնար է կեալ մեզ և ծառայութիւն առնել ձեզ, այն է հաւատոյ քրիստոնէութեան հաստատութիւն, մոգութեան և ատրուշանաց յաշխարհէս Հայոց բարձումն, զեկեղեցւոյ ըստ մեր կամաց զպայծառութիւն և զպաշտօն, որ կարևոր են մեզ և հարկաւորապէս պիտոյ՝ կնքով թագա-

ւորին Հաստատեա մեզ. և այլ զոր ինչ գրեալ է ի նամակին՝ գիտես զամենայն և ոչինչ պիտոյ է բազմաբանել առաջի քո։ Բայց յաղագս գահու և պատուոյ՝ և շքեղութեան, Հայերով յիւրաքանչիւր ուրուք վաստակս՝ տաջիք անհոգութեամբ և մի զրկիցէք։ Զայս ամենայն խօսեցեալ Մամիկոնենին Վահանայ՝ սիրով լսէր զամենայն Նիխոր և ախորժելով յանձն առնոյր։ Խնդրէր Նիխոր ի Վահանայ զբնիկ Հայոց զայրուձին. Կազմեա, ասէ, փութով և արձակեա ի դուռն, քանզի Զարեհ որդի Պերոզի ընդդիմացեալ Արեաց արարուածի՝ գունդ դեռ կազմէ ի կորուստ անձին իւրոյ և Հաւանելոց ընդ իւր. և դու փութա արձակել զհայ այրուձի, որ նախ քան զքո երթալն ի դուռն՝ սպաս մի մեծ ծանուցանի արարուածքդ առաջի թագաւորին և ամենայն Արեաց։ Վասն զի և ինձ հրաման եր թագաւորն վաղվաղակի մտանել ի դուռն. վասն զի ասուածք զայս իրս յաջող և բարերարութեամբ վճարեցին, զի ես առաւել վաղագոյն երթամ անդր։ Եւ ուրախացեալ Նիխորոյ և Մամիկոնեանն Վահանայ առ միմեանս ոչ բազում ինչ աւուրս՝ հրաժարեալք ի միմեանց չուէին խաղաղութեամբ, Նիխոր՝ առ թագաւորն ի դուռն, և զօրավարն Հայոց Մամիկոնեանն Վահան՝ ի Դուին» (Փարպ. Ղ.Դ.)։

**38.** Վահան իւրովք գալով յեզր Երասխայ ընդ որ պարտ էր անցնել երթալու համար ի Դուին՝ կը գտնէ Արտաշատու կամուրջը կործանած։ Հոս Փարպեցին կը մոռնայ դարձեալ հրաշք։ Երբ զօրքը խնդրելով անց և չկրնալով գտնել, կը փորձէ անցնել ծանծաղագոյն կարծուած տեղերէն, և հազիւ ոմանք ընկղմելու վտանգաւ կը յաջողին ելլել յայնկոյս՝ Վահան խաչակնքելով զինքն կը նետուի գետը, կ'անցնի դիւրաւ և անվտանգ, և ապա բոլոր զօրքն զհետ նորա կ'անցնին իբրև ընդ ցամաք, ինչպէս անդ ուրեմն Իսրայելացիք ընդ Յորդանան։ Չիք տարակոյս, թէ Վահան, քաջ և փորձ զօրական, գետոյն հոսանաց նշաններէն գուշակելով, կամ թերևս ըստ պատահման գտնելով հուն մի՝ համարձակ անցաւ և անցոյց զօրքը բնական ճանապարհաւ, զոր բարեպաշտ Փարպեցին, թերևս ինքն իսկ Վահան ընծայեցին սքանչելեաց։ Զիարդ և իցէ՝ Վահան կու գայ ի Դուին, և յետ մատուցանելոյ պատարագ շնորհակալութեան և բաշխելոյ առատ տուրս աղքատաց ըստ սովորութեան՝ կը ղրկէ Հայոց այրուձին ի Դուռն ընդ հրամանատարութեամբ Վրենայ Վանանդացւոյ և իւր եղբօր Վասակայ որդւոյն՝ Գրիգորի։ Հայ գունդը, մանաւանդ Գրիգոր, կը կռուին քաջութեամբ. Զարեհ կը փախչի, այլ բռնուելով կ'սպանուի.—«Հասեալք յեզր գետոյն (Երասխայ), ի ժամանակի իւրոյ պղտորութեանն զկամուրջն Արտաշատու գտին աւերեալ, էր ինչ որ ի տեղեացն բնակչաց, և

էր ինչ որ ի սաստկութենէ ջուրցն հոսանաց. և տարակուսեալ զօրքն խնդրէին տեղիս անցի, և ոչ գտանէին, և փորձելով ոմանց զբազում տեղիս՝ ընկղմեալք ի ջուրսն և հազիւ գտեալ անդրէն ելս՝ ապրէին։ Իսկ քաջ զօրավարն Հայոց Վահան մերձեալ ի տեղի մի յեզր գետոյն, և տեառնագրեալ զինքն նշանաւ Խաչին սրբոյ կենսատուի՝ իջանէր ի գետն, և որպէս ընդ յոյժ տեղի ծանծաղ՝ անցանէր խաղաղութեամբ ընդ ջուրսն, որ և տեղին ամենայն գըն-դին լինէր ճանապարհ անցից։ Եւ լինէր այս նշան մեծ յայտնի. ընդ որ և յոյժ կացացի արանց լինէր անցանել դիւրաւ ըստ կամի, և ամենայն այրուձիոյն, ի ճշմարիտ հիմնացեալ հաւատոյն քաջ զօ-րավարին Հայոց Վահանայ լինէր նշան, որպէս իսրայէլեան ժողո-վրդոցն յանցանելն իւրեանց ընդ Յորդանան։ Եւ ապա մտեալ յոս-տանն ի Դուին, շնորհակալութեան զպատարագն մատուցեալ Աս-տուծոյ, և զաղքատացն ողորմածութեամբ ըստ սովորութեան կատա-րեալ զտուրս՝ ուրախանային և ինքեանք ըստ Աստուծոյ հաճոյից խնդալից սրտիւ։ Ապա կազմեալ Մամիկոնենին Վահանայ զայրուձին Հայոց՝ արձակէր ի Դուռն, կարգեալ զգունդն ի ձեռն Վրենայ Վա-նանդացւոյ, ընդ որս կազմեալ արձակէր և զիւր եղբօրորդի մի, զոր-դի նահատակին Վասակայ, զԳրիգոր։ Որոց հասեալ ի դուռն՝ եր-թային պատրաստութեան գործոյ պատերազմին, և հարեալ ի դիմի միմեանց գունդքն երկոքեան, մատնեալ ի պարտութիւն գունդն Զարեհի՝ փախստական լինէին, և բազում վիրաւորք անկեալ յերկի-կործանէին։ Անդ քաջացեալ հայրանման սեպուհն Մամիկոնէից Գրիգոր, ցուցեալ մեծ քաջութիւն՝ յայտնի լինէր զօրավարին և զօ-րացն ամենեցուն, և հռչակեալ նորա լաւութեան անուն հասանէր մինչև ի թագաւորն Վաղարշ։ Լաւացեալ և սեպուհն վանանդացի Վրէն, գործ երևեցուցեալ քաջանայր։ Իսկ Զարեհն փախուցեալ ի լեռնակողմն տեղիս ամրանայր. զոր ձերբակալ արարին և ածին ի հրապարակն արքունի, և անդ նման անասնոյ փողոտէին յանխնայս» (Փարպ. ԼԴ.)։

**39.** Յետ սակաւուց Վահան գումարելով գունդ մի այրուձիոյ իւր հաւատարիմ նախարարներով կ'երթայ առ Վաղարշ, որ կ'ըն-դունի զնա մեծ պատուով։ Յետ տալոյ նմա օր մի ոգի առնուլ ճա-նապարհորդութեան աշխատութենէն՝ յաջորդ օրը կը կազմէ ժողով մեծ յաւագանւոյն, և յիշելով ինչ որ արդէն Վահան յայտնած էր բանիւ և նամակաւ ի ձեռն Նիխորոյ՝ կ'արդարացունէ ապստամբու-թիւնը։ Վահան կը պատասխանէ թագաւորին, ցուցնելով թէ Հայ-ոց համար գլխաւոր դժգոհութեան պատճառ՝ իւրեանց հաւատոյն դէմ բռնութիւնն էր, և թէ նոքա որ ուրացութեան համար պա-

տիւ և պաշտօն ընդունած են՝ առհասարակ շողոքորթ և անպիտան մարդիկ են, յորոց զարշի Հայոց ռամիկն անգամ։ Ի վախճանի կը խնդրէ Վահան բառնալ ուրացութեան պատճառը, զոր կ'անուանէ խաբէութեան վաճառ, թողուլ զքրիստոնէութիւնն ազատ, և պահանջել հաւատարիմ ծառայութիւն, զոր պիտի չզլանան նոցա երբեք Հայք։ Վաղարշ գովելով Վահանայ համարձակութիւնը՝ կը խոստանայ կատարել Հայոց խնդիրը.—«Յետ սակաւ աւուրց ժողովեալ Մամիկոնենին Վահանայ զայրուձին Հայոց, ինքն և ամենայն ուխտակից նախարարքն ընդ նմա՝ չուեալ գնայր առ թագաւորն Վաղարշ, և հասեալ ի դուռն վաղվաղակի ճեպով ժամ արարեալ յանդիման լինէր թագաւորին և ամենայն Արեաց աւագանւոյն։ Ածեալ զմտաւ զճանապարհորդութեանն աշխատութիւն թագաւորին Վաղարշու զՄամիկոնենին Վահանայ, միայն ստէպ հարցեալ զողջոյն՝ ուրախանայր, այլ ոչինչ աւելի քան զայն հարցանէր զնա զայն օր։ Եւ ի վաղիւն ժողովէր զամենայն աւագանի դրանն արքունի և զայլ ամենայն բազմութիւն Արեաց, և լինէր խորան մեծ լցեալ սաստիկ որերով։ Սկսանէր խօսել թագաւորն Վաղարշ ընդ Մամիկոնենին Վահանայ. Լուաք, ասէ, լիով զամենայն խօսեցեալսն քո ընդ Նիխորոյ, և՛ զոր ինչ պատգամաւորօք էիր ասացեալ, և՛ զոր ինչ նամակաւ, և՛ զոր ինչ դէմ յանդիման քո և նորա խօսեցեալ էր ընդ միմեանս, պատմեաց մեզ, և ոչ էր քո ստեալ ի բանիցն զոր խօսեցեալ էր և ոչ բան մի։ Պերոզի իմ եղբօրն... եթէ զքեզ միայն էր կորուսեալ յԱրեաց՝ թեթև ինչ էր վնասն. ծառայ մի կորնչէիր, որում թերևս փոխանակ գտանէր. բայց նա այնչափ անթիւ բազմութիւն լաւ որերոյ կորոյս, որոց այսօր փոխանակ չիք, յետոյ ապա և զինքն կորոյս և զորդիս և զկանայս։ Արդ՝ եթէ դու եղեալ էիր պատճառ քո կորստեանդ և այնչափ բազմութեանն որ կորեան ընդ քո ձեռն՝ դու այսօր հարցման արժանի էիր և պատուհասի և չարաչար մահու. բայց զի այլ է պատճառ ամենայն գործոյդ և կորստեան զոր գործեցեր՝ զքեզ ընդ այլոյ բռնութեան և վնասու պատուհասել կարի ծանր է, և օրէնք մեր չհրամայեն։ Զայդ գործ զոր դուդ կարացեր գործել՝ բազումք խորհէին յԱրիս գործել, բայց չեղեն ձեռնհաս, զի չկարացին զանձինս ի մահ տալ այդպէս աներկիւղ՝ որպէս դուքդ ետուք։ Երանի՜ թէ և այլ որերոյ, զորս ի զուր տարաւ կորոյս Պերոզ՝ կարացեալ էր առնել զայնպիսի քաջութիւն զոր դուքդ արարէք. թերևս այսօր կենդանի էին իբրև զձեզ և ի միջի առ մեզ։

«Պատասխանի տուեալ Մամիկոնենին Վահանայ թագաւորին Վաղարշու առաջի ամենայն բազմութեանն՝ ասէ. Խօսել առաջի

Աստուծոյ և առաջի ձեր Թագաւորաց երկայն բանիւք չէ արժան։ Ես զամենայն զխօսս մեր և զխնդիր և զհամարձակութիւն գործոյն ցուցի ձեզ և ամենայն դրանն աւագանւոյն ի ձեռն Նիխորոյ գրով և կնքով. զնոյն բազում անգամ ասել՝ յերկարումն է խօսից և ձանձրութիւն։ Զոր ասացէք դու զեղբօրէն ձերմէ զՊերոզէ՝ շատ էր։ Եթէ յայլ ոք լինէր ի նմանէ բռնութիւն՝ տամբ էր արդեօք և կամ կենօք և կամ պատուհասիւ ինչ այլով։ Իսկ զմեզ հոգւով հարկանէիք. որում կարեաց և վտանգի ոչ մեր նախնիքն և ոչ մեք առաջի չկարացաք կալ։ Եւ հանապազ բողոքեալք և բողոքեմք. մի բռնադատել զմեզ Թշնամանել՝ զոր կամաւ և խորհրդով պատուել ոչ կարեմք և ոչ սիրել. իշխանաբար չլուեալ բողոքոյն մերոյ՝ կամէիք կորուսանել զմեզ։ Օրէնք մեր տերանց հրամայեն ծառայել և հնազանդ լինել որպէս Աստուծոյ. արդ, աղէ, ցուցէք այր մի որ զձեր օրէնս (կրօնս) կատարեալ և պատուեալ է՝ վաստակ և գործ ցուցեալ իցէ վասն պիտոյութեան և կամ ի կռուի։ Ձեր Արեաց զօրագլուխք բազում եղեալ են ի տեղիս տեղիս. ասասցեն զմիոյ ուրուք ի դոցանէ զերևելի գործ ինչ, և վասն այնպիսի վաստակոց ձեր հատուցումն արարեալ է։ Զգործս նոցա գիտեն գաւառակիցք նոցա և այլ մարդիկ աշխարհին Հայոց, թէ որպիսի մարդիկ են... ընդ որս կրտսեր շինական մարդիկ աշխարհին Հայոց հաց զարշէին ուտել, և կամ բնաւ մօտ իսկ երթալ առ նոսա... զայլն խաբէութեամբ զձեր օրէնս ունէին, և ըստ կամի աղտեղեալ զկրակն զձեզ առ անմիտս ունէին։ Յաղագս որոյ համարձակապէս ձայնիւ բարբառով առաջի ձեր ասեմ այսօր. ի բաց բարձէք զխաբէութեան զվաճառս զայդ յաշխարհէն Հայոց... Եթէ դուք ի մէնջ որպէս ի ծառայից զձեր տերանց զպատիւն խնդրէք, զգործ և զվաստակ և զհպատակութիւն, զօգուտ, զարդարմտութիւն՝ անզրկող մտօք զիւրաքանչիւր մարդոյ ըստ իւրաքանչիւր վաստակոյ զարժանն հատուցէք։ Մեր ամենեցուն այդ բանք են և այդ խնդիր, եթէ շնորհեալ հաստատէք զխնդիրդ զայդ մեզ, և ի ծառայութենէ ձերմէ զմեզ ի բաց չկամիք հանել՝ որպէս օրէնքն են Թագաւորաց՝ գրով և կնքով զայդ մեզ հաստատուն արարէք, և ի մէնջ որպէս ի ծառայ որերոյ գործ խնդրեցէք և հպատակութիւն. և ձեր մտացի և ամենահայեաց ակամբ հայեցարուք յայր և ի գործ նորուն, և հատուցէք զարժանն։ Իբրև խօսեցաւ զայս ամենայն բանս Մամիկոնեանն Վահան առաջի Թագաւորին Վաղարշու և առաջի ամենայն աւագանւոյ դրանն՝ բարձր ձայնիւ գովեցին ամենեքեան և առ լաւակալան զնա, զարմացեալք ընդ իմաստութիւնն և ընդ շնորհ աջողութեան բանիցն որ ելանէին ի բերանոյ նորա։... Յայնժամ պա-

տախանի տուեալ Թագաւորին Վաղարշու՝ ասէր ցՄամիկոնեանն Վահան և ցամենայն հայ Նախարարսն ուխտակիցս նորա. Զամենայն զոր ինչ խորհեալ է ձեր և իմացեալ, և խօսեցաւ առաջի մեր ձեր Վահան՝ տուեալ եղիցի ձեզ մեր գրով և կնքով այսօր մինչև ցյաւիտեանս. և զգործ ապստամբութեանդ զոր ի բռնութենէ Պերոզի և ոչ ի ձեր կամաց գործեցէք՝ թողեալ իցէ ձեզ այսօր, և մի ոք իշխեսցէ ի թագաւորաց որ զայս գահ ունին և կամ Արի այր յիշել զայդ կամ առանձինն յիւրեանց խօսս և կամ առաջի առն հայոյ յայսմհետէ մինչև յաւիտեան։ Բայց դուք զհպատակութիւնն զոր արժան է ծառայից առ տեարս առնել՝ հատուցէք առ մեզ լիով և կատարեցէք։ Զայս ասացեալ թագաւորին արձակեաց զատեանն» (Փարպ. ԳԵ.)։

**40.** Աւագանին գիտնալով թագաւորին յօժարութիւնը՝ կը խնդրեն տալ Վահանայ Մամիկոնեան ցեղին նահապետութիւնն հանդերձ սպարապետութեամբ։ Վահան իմանալով զայս՝ հազիւ կ'առնու յանձն, ի թախանձելոյ նոցա ստիպեալ։ Միւս Նախարարաց ևս կը տրուի ինչ որ պատշաճ էր։ Երբ Վահան և իւրքն կու գան հրաժարել թագաւորէն՝ Վաղարշ կը հարցունէ Վահանայ, թէ գո՞հ էր ընդունելութենէն որ եղաւ նմա և իւրոցն։ Վահան յետ պատշաճ շնորհակալութեան, լի իմաստութեամբ և խոնարհութեամբ կը խնդրէ տալ նաև Կամսարականաց իւրեանց տոհմին նահապետութիւնը, և կը տրուի։ Արծրունեացը միայն կը մնայ առ ժամն։ Այսպէս կ'արձակուին Վահանեանք, և հասնելով ի Հայս՝ կ'ընդունուին մեծ ուրախութեամբ կաթողիկոսէն և ժողովրդենէն, և գալով ի Վաղարշապատ, յետ այց առնելոյ սուրբ տեղեաց՝ Վահան կու գայ ի Դուին որ բուն ոստանն էր.—«Ի վաղիւն խորհեալ աւագանւոյ դրան թագաւորին Վաղարշու, որ գիտէին թէ կարի սիրով ախորժէ և կամի լսել և առնել՝ խնդրեցին տալ Մամիկոնենին Վահանայ զտէրութիւն Մամիկոնէից և զսպարապետութիւն Հայոց, և թագաւորն կամաւ և սիրով յանձն առնոյր։ Իբրև ծանուցին Վահանայ զկամս թագաւորին՝ պատասխանի արարեալ ասէր. Ընդդիմանալ կամացն ձերոց և հրամանին չունիմ իշխանութիւն, և յիս կողմն կամք ձեր և արարուած կարի մեծ է և առաւել։ Բայց կամէի թէ սակաւ մի գործ ցուցանէի և ապա, որով ձեզ ըստ արժանի հաճոյ եղեալ՝ հայէիք ի վերայ, և ապա որ ինչ թուէր ձեզ և կամէիք առնել՝ առնէիք. բայց առ այս նուազ կամէի թէ ներէիք ինձ։ Եւ թագաւորին և ամենայն աւագանւոյն լուեցուցեալ զբանս Մամիկոնենին Վահանայ՝ բազմեցուցանէին զնա ի գահու տէրութեան Մամիկոնենից, տուեալ ցնա ըստ օրէնի նախնեաց իւրոց և

զսպարապետութիւն Հայոց աշխարհին։ Շնորհէին և այլոց ուխտապահ Նախարարացն Հայոց իւրաքանչիւր ումեք ի ժամուն որ ինչ պէտք էին պատշաճ ըստ անձին արժանաւորութեան։ Եւ ընկալեալ զամենեսին թագաւորին Վաղարշու և ամենայն աւագանւոյն լի սիրով և պատուով՝ ի հրաժեշտի կացուցանէին երթալ խաղաղութեամբ յաշխարհն Հայոց։ Եւ եկեալ տէրն Մամիկոնէից և սպարապետն Հայոց Վահան հրաժարել ի թագաւորէն Արեաց Վաղարշէ և յամենայն դրանն աւագանւոյն՝ հարցանէր թագաւորն Վաղարշ զնա և ասէր. Վահան, սպարապետ Հայոց, գո՞հ ես զմէնջ. քաջ կալա՛ք՝ թէ պիտի այլ ևս ինչ. ասա։ Եւ զօրավարն Հայոց Վահանայ պատասխանի տուեալ ասէր ցթագաւորն. Զոր ինչ ձեր բարերարութիւնդ առ մեզ արար՝ Աստուծոյ միայն որ ամենեցուն արարիչ է և զամենայն մարդոյ կամի զբարի և զօգուտ, հնար և վայելուչ է առնել առ մարդ, դուք արարէք զայդ առ մեզ անարժան ծառայս։ Քանզի զվնասն թողէք, զահ և պատիւ տուեալ մեծարեցէք, մեռելութեան յարուցիչ եղայք, զգլորեալ և զկորուսեալ աշխարհ մի գըտեալ կանգնեցէք։ Բայց որովհետև հարցէք և համարձակեցուցէք զարդարն ասել, որպէս եղէք աստուածաբար կենդանացուցիչ մեռելութեան իմոյ, և յարուցեալ զիս ի միջի արարէք՝ կամէի թէ զբովանդակ անձնս յարուցեալ էր և ոչ զկէսս, վասն զի զկէսս մեռեալ տեսանեմ դեռ։ Եւ թագաւորին Վաղարշու հարցեալ ասէր. Ա՛դէ, յայտնապէս ծանո մեզ զպէտս բանիդ զի գիտասցուք։ Եւ սպարապետն Հայոց Վահան ասէ. Զի թէ հնար էր շնորհել ձեզ զտանուտէրութիւնն Կամսարականին՝ ապա բովանդակապէս շնորհեալ ի ձէնջ տեսանէի զմեռելութիւն ամենայն անդամոցս կենդանացեալ։ Եւ թագաւորին Վաղարշու պատասխանի արարեալ սպարապետին ասէր. Յաղագս ոչ կարի տրտմեցուցանելոյ զքեզ ի ժամուս, և դարձեալ վասն զի նախ և առաջին զայդ պարգև խնդրեցեր ի մէնջ՝ եղիցի վասն քո տուեալ զտէրութիւն Կամսարականին։ Իսկ յաղագս տէրութեանն Արծրունւոյն, թող վայր մի մարդիկն որ ի տոհմէն են՝ սպաս ինչ արժանաւորապէս ցուցցեն առ մեզ, և վաստակս ինչ յօգուտ Արեաց վաստակեսցեն, հայեսցուք ապա և մեք յարժանն. բայց դու այժմու ի մէնջ պարգևդ գոհ լեր, և ջանա ամենայն ուժով տիրասէր լինել յայսմհետէ և արդարամիտ և աշխարհաշէն, և երթ բարեաւ ի քո ընտանիս և յաշխարհն, և հասելոյ երբէք ի մէնջ հրամանի կազմ կաց և պատրաստ։ Եւ հրաժարեալ թագաւորին Վաղարշու զսպարապետն Հայոց զտէրն Մամիկոնէից զՎահան և զամենայն նախարարս Հայոց՝ արձակէր խաղաղութեամբ։ Իբրև գայր զօրավարն Հայոց Վահան յաշխարհն Հայոց՝ ընդ առաջ ելա-

*նէր նմա սուրբ այրն Աստուծոյ կաթողիկոսն Յոհան պատուական նշանաւ Խաչին... որով յուղարկեացն իսկ ի դուռն զամենեսեան, և ողջունեալ զնա և զամենայն նախարարս որ ընդ նմա և զամենայն բազմութիւն զօրուն օրհնութեան համբուրիւ՝ տայր ուրախալից սրտիւ. Ցնծացէ անձն իմ ի Տէր, զի զգեցոյց ինձ զգեստ փրկութեան և պատմուճան ուրախութեան, որպէս փեսայից եդ պսակ, և որպէս հարսն արքայութեան իւրոյ զարդարեաց զարդու: Ասացեալ զայս ամենայն սրբոյ կաթողիկոսին՝ օրհնեաց զամենեսեան: Նախ գային ի քաղաքն Վաղարշապատ, և ըստ սովորութեան իւրում սպարապետն Հայոց Վահան ուխտակից նախարարօքն որ ընդ նմա էին՝ կային անդ աւուրս, կատարէին զուխտս և զնուէրս ի սուրբ եկեղեցւոջն կաթողիկէի, և ապա յիւրաքանչիւր տեղիս նահատակելոց կուսանաց, և հոգացեալ զպէտս դարմանոյ աղքատացն՝ գային միաբան... ուրախ լինէին զուարճացեալք առ զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից Վահանայ և առ միմեանս. և կացեալ անդ աւուրս՝ ապա չուեալ զօրավարին Հայոց գայր մտանէր ամենայն Հայոց զօրուն բազմութեամբն ի բուն ոստանն Հայոց ի Դուին»: (Փարպ. ՂԶ, ՂԷ.):*

**41.** *Յետ ոչ բազում աւուրց գալստեանն Վահանայ ի Հայս, ինչպէս կը թուի՝ Անդեկան ոմն այր զգօն կու գայ իբրև մարզպան, որ տեսնելով Վահանայ իմաստութիւնն յամենայնի, սիրեց զնա, և շատ անգամ գովութեամբ կը յիշէր զՎահան ի թուղթս իւր առ աւագանին Պարսից և առ Վաղարշ: Ապա յերթալ նորա ի դուռն՝ խրատ տուաւ թագաւորին՝ զնոյն ինքն զՎահան կարգել մարզպան Հայոց, և եցոյց, թէ որչափ օգտակար լինելոց է այս թէ Հայոց և թէ արքունեան: Հաճոյ թուեցաւ թագաւորին և աւագանւոյն խորհուրդն Անդեկանայ, և Վահան կարգեցաւ հրովարտակաւ մարզպան Հայոց փոխանակ Անդեկանայ, յանպատում ուրախութիւն Հայոց, ինչպէս համառօտիւ բայց գեղեցիկ կը պատմէ Փարպեցին.—«Յայնժամ գայ յերկիրս Հայոց մարզպան որում անուն էր Անդեկան, այր մտադիր, որ գիտէր որոշել զիմաստունն յանմտէն և զլաւն ի վատթարէն: Տեսեալ նորա օր ըստ օրէ զաստուածատուր իմաստուն աջողութիւնս, որ բնակեալ էին ի զօրավարին Հայոց տեառն Մամիկոնէից Վահանայ՝ զարմանայր ի միտս իւր ի ծածուկ. սիրէր զՎահան և ի դուռն ամենայն աւագանւոյն ծանուցանէր: Տայր գիտել և թագաւորին Վաղարշու լրով զամենայն: Ծանապարհորդեալ և ինքն ի դուռնն՝ խօսէր ընդ թագաւորին առաջի ամենայն աւագա-*

նուոյն յոյժ զարմանալով։... Համարձակիմ, ասէ, առաջի ձեր ասել յայտնապէս, թէ աւելի է ձեզ և անդէպ այլ մարզպան կացուցանել։ Քանզի այլ մարզպան որ երթայ յաշխարհն Հայոց՝ նախ և առաջին զայն խրատ չունի զոր այրն այն ունի։... Եւ դարձեալ օտար մարզպան որ երթայ յաշխարհն Հայոց, քանզի աշխարհն մեծ է՝ յամս երկուս և երիս հազիւ կարէ ճանաչել զիրս աշխարհին, զդիւրն և զդժուարն, ապա զմարդիկ աշխարհին, զլաւսն և զվատթարսն, զանպիտանս և զպիտանիս, և վարելով ըստ անգիտութեան խառն ի խուռն՝ ոգւոց շատ ծանր լինի։ Իսկ նա, զի բնիկ յաշխարհէն է՝ զամենեսեան յականէ ճանաչէ, և զլաւն առ լաւն ունի, և զանպիտանս առ յետինս։ Առաւել և ս. մարզպանն պարսիկ որ երթայ յաշխարհն՝ կնաւ երթայ և որդւովք, դրամբ և սիրելեօք, ծառայիւք և աղախնեօք, և այն ամենեքեան եթէ զԱրեաց տեառնզոռճիկ ուտեն՝ չեն սակաւ ծախք, և եթէ զաշխարհին ուտեն՝ շատ վտանգ հասանէ աշխարհին մարդկան։ Իսկ նա թէ լինի՝ զիւր տանն համբար ուտէ, և զամենայն յարքունի գանձ համարի, և արքունի իրաց օգուտ լինի։... Եւ լուեալ զայս ամենայն բանս յԱնդեկանայ թագաւորին և ամենայն դրանն աւագանւոյն՝ հաճեալ մեծաւ գովութեամբ առ լաւս կալան զԱնդեկան, որպէս զայր տիրասէր և աշխարհաշէն։ Վաղվաղակի հրամայէր թագաւորն Վաղարշ միաբանութեամբ ամենայն աւագանւոյն դրանն և Արեաց՝ հրովարտակ առնել ի Հայս, և զտէրն Մամիկոնենից զզօրավարն Հայոց Վահան մարզպան ի վերայ աշխարհին Հայոց կարգել։ Բերեալ զհրովարտակ մարզպանութեանն տային ցՎահան, և մարզպան ի վերայ աշխարհին Հայոց կարգեալ հաստատէին զնա։ Իսկ Վահան ընկալեալ զհրովարտակ մարզպանութեանն ի ձեռաց դեսպանին, թէպէտ և զխանդածութիւն հայ մարդկանն ճանաչելով ծանրանայր ընդ իրսն՝ այլ սակայն և ոչ ընդդիմանալ հրամանի թագաւորին իշխէր և անհնազանդ լինել։ Առեալ զհրովարտակն՝ խնդրէր վաղվաղակի անդրուար երթալ ի տունն Աստուծոյ։ Եւ լուեալ զայս մարդկանն որ ի քաղաքին, գրոհ տուեալ առ հասարակ ամենայն մարդոյ, նախարարաց և ազատաց, ոստանկաց և ռամկաց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, այլ և հարսանց անգամ յառագաստաց, մոռացեալ առ վայր մի առ խնդին զամօթ հարսնութեանն՝ դիմեալ ընթանային յեկեղեցին։ Ոչ բաւեալ ընդունել զամենեսին տանն Աստուծոյ՝ լնուին արտաքոյ սրահք եկեղեցւոյն և փողոցք և ամենայն տեղիք հրապարակացն շուրջանակի։ Եւ էր այն օր անյագ խնդութիւն և անսպառ ուրախութիւն աստուածասէր բարեսիրացն և ողջախոհամտաց լուսահայեցաց, և սուգ թախծալից և տրտմութիւն անմխ-

քթար՝ խօթամատացն և խարդախաց։ Եւ սրբոյ կաթողիկոսին Հայոց Յովհաննու տեսեալ զանկարծելի աւետաւորութիւնն շնորհեալ յԱստուծոյ՝ ցնծալից սրտիւ տայր սաղմոսել ի ժամուն. Ցնծացէք որհնեցէք զԱստուած, և զՏէր յաղթերացն Իսրայելի. և կարգացմունս հրամայէր զտեղի ելիցն Իսրայելի ի ծառայութենէն Փարաւոնի, և ի Թագաւորութենէն զընթերցուածն՝ ուր թագաւորեցոյց Դաւիթ զորդին իւր զՍողոմոն»։

**42.** Ըստ Փարպեցւոյն՝ Յոհան Մանդակունի որ կաթողիկոս էր ժամանակին՝ այս աւթիւ խօսեցաւ ճառ, որոյ օրինակն կայ ի վախճանի պատմութեան Փարպեցւոյն, բայց մեք կը թողունք, իբրև ոչ արժանի, թէ ըստ լեզուին և թէ ըստ մտացն, անուան Մանդակունւոյն, որ եթէ ոչ աշակերտակից՝ գէթ մօտ էր ժամանակաւ թարգմանչաց։ Ճառն է ո՛չ յորդորակ, ո՛չ գովեստ, ոչ շնորհակալութիւն։ Չիք ի նմա ամենևին ո՛չ ակնարկութիւն վերջին յաջող ելից, յորմէ թելադրեալ խօսի ատենաբանն, ո՛չ յիշատակութիւն Վահանայ անձին և վաստակոց, և ոչ յիշատակութիւն տիրող իշխանութեան շնորհաց, պարագաներ՝ զորս ակնարկել հարկ էր և վայել. այլ է հասարակաց տեղի Ս. Գրոց պատմական գիպաց ինչ, որ չունին ամենևին պատշաճութիւն օրուան նիւթոյն։ Միթէ այնչափ հեռի՞ էր Յոհան յոճոյ և ի ճարտարմտութենէ աշակերտակցին կամ գէթ ժամանակակցին իւրոյ Եզնկայ, որ ունի ըստ ամենայնի յոյն հարց երևելիներուն, Բարսղի, Նիւսացւոյն, Ոսկեբերանի և այլոց կատարեալ նկարագիրը։ Զսոյն կարծիս կը թուի թէ ունէր և հրատարակիչ Փարպեցւոյն, որ կամելով արդարացունել զՄանդակունին՝ տայ ի ծանօթութեան, էջ 548. «Թուցէ ըստ ճեպ ի ճեպոյ և յանպատրաստից խօսից հայրապետին գրեալ է ճառդ, յորում ընդ բազում վայելուչ և պատշաճ իմաստից՝ են և անյարմար բանք, լաւագոյն օրինակօք ուղղելի»։ Բայց այս պատճառ չթուիր բանաւոր։ Եթէ չլինէր վկայութիւն Փարպեցւոյն, որ կ՚ընծայէ զճառն Յովհաննու, և կապակցութիւնն չէր այնպէս սերտ ընդ պատմութեան Փարպեցւոյն՝ մարթ էր թերևս համարել զայն յետնագոյն ժամանակի և գրչի գործ, այսինքն առանց պատրաստութեան խօսուած ի Մանդակունւոյն, և յետոյ յայլմէ յօրինուած ըստ մտացն։ Ուստի եթէ գրուածն է, ինչպէս հաւանական է, նորին իսկ Յովհաննու՝ զարմանալի նշան է արագ խանգարման և՛ մատենագրական հանճարոյ և՛ լեզուին թարգմանչաց այնպէս ի սուղ ժամանակի, այն է ի ժամանակի իբր երեսուն կամ քառասուն ամաց (440—485)։

**43.** Փարպեցւոյն մատեանն, որում հետևեցաք իբրև գլխաւոր

տղքեր երկու մեծ ապստամբութեանց, այն է Վարդանանց և Վահանայ՝ ունի իբր երեսուն և հինգ կամ քառասուն ամաց խառնակեցդառն ժամանակներու գործեր, յորս գլխաւոր գործիչ և առաջնորդ է Մամիկոնեան ցեղն։ Կը համարձակինք կոչել զՓարպեցին հաւատարիմ պատմիչ, որ երկրորդ մասին, այն է Վահանայ պատմութեան ժամանակակից՝ իրիք իրիք ականատես ևս է, և այնու մանաւանդ է վստահութեան արժանի, զի կ՚ուղղէ զպատմութիւն իւր առ նոյն ինքն Վահան, երկրորդ ապստամբութեան դիւցազն, որոյ և հրամանաւ ասէ թէ գրեց, ինչպէս հաւատալի է։ Կան սակայն երկու կէտեր. որ յիրաւի կու տան տեղի կասկածանաց անաչառ և լուսաւորեալ ընթերցողին. նախ՝ հրաշալիք, որոց ուրեք ուրեք կու տայ մուտ պատմիչն. երկրորդ՝ ճառք կամ բանաքննացութիւնք, զորոց բուն պատճէնն կամ զօրինակն կը թուի տալ Փարպեցին։ Առաջնոյն համար կ՚արդարացունենք զնա, խորհելով ժամանակին ոգին, որ սովոր էր նորանշան դիպուածներ, որոց պատճառն անյայտ էր՝ ընծայել վերին իրիք զօրութեան, ոգի՝ յոր մէտ էր ոչ երկիւղած Փարպեցին միայն, այլև դիւցազն իսկ նորա, կորովի և՛ ուժով և՛ մտօք։ Իսկ երկրորդին, այն է նամակներու և ատենաբանութեանց համար գիտենք, թէ քան զՓարպեցին շատ աւելի հաւատարիմ հին պատմիչք փորձած են դնել պատմութեան գլխաւոր անձանց բերանը ճառեր, և ընծայել նոցա ատենախօսի կերպարան։ Բուական ստուգութիւն կրնայ մատուցուիլ բանաքննացութեանց որ գրով կամ նամակաւ եղած են։ Հանդերձ այսու չէ հնար աւելորդաբանութեան գոյն չտեսնել այս մասերուն մէջ, մանաւանդ որ կամ գովեստ են Վահանայ և նորայոցն քաջութեան, և կամ իբր թէ անաչառ պարսաւ երևելի հակառակորդի, ինչպէս Պերոզի վրայ դառն և կծու մեղադրութիւնն, զոր կը դնէ Փարպեցին ի բերան Նիխորոյ և այլոց, նա յաջորդին իսկ Պերոզի՝ Վաղարշու։ Հանդերձ այս ամենայն թերութեամբք, որ չեն մեծ ըստ մեզ՝ պատուական պատմիչ է Փարպեցին։ Առանց Փարպեցւոյն, Եղիշէիւ միայն՝ անհնար էր մեզ եթէ ոչ բոլորովին ստոյգ, գէթ հաւանական դատաստան կազմել Վարդանանց ինքնին առեղծուածոյ պատմութեան վրայ։

Ձենք կարծեր թէ զգայուն ընթերցողք մեղադրեն զմեզ, որ այնպէս երկայն և մանր առինք երկու ապստամբութեանց, Վարդանայ և Վահանայ պատմութիւնն, որ է արդարև տխուր ժամանակի, մինչ ակար բայց մեծարոյ Հայն, թող իւր ազատութեան կորուստը՝ կ՚ողբար ոչ միայն անհնարին վիշտը զոր կը կրէր Սասանեան հարստութեան մոլեռանդ բռնութենէն, յորոյ ի ծուղակն ինկած էր աչօք բացօք, այլ և այն պատճառաւ զիւր նորքին երկ-

*պառակտութիւնն։ Փարպեցին կ'աւանդէ մեզ մեր պատմութեան այս
ողբալի մասն այնպէս՝ որ անհնար է զգալուն ընթերցողին չհեղուլ
արտասուաց կաթիլներ։ Փառաւոր Նախարարութիւն՝ յանդարձ օտա-
րութեան, պատուական զինուորութիւն՝ նշաւակ անթիւ վտանգնե-
րու, կանայք, արդարև փափկասունք ըստ Եղիշէի՝ ի յետին կարօ-
տութեան, տխեղծ մանկտի՝ ընդ խնամով անխնամ մարց, սքանչելի
հովիւ՝ սրտառուչ ի գլուխ հօտին—զայս ամենայն զոր հազիւ բա-
ւական էր պատմել Մեղուն Ատտիկեցի՝ կը պատմէ մեզ Փարպեցին
նոյնպէս խանդակաթ։ Եթէ մեր բովանդակ պատմութիւնն համեմա-
տենք մարմնոյ՝ Վարդանայ և Վահանայ պատմութիւնն է այն
մարմնոյն սիրտը։*

ՎԵՐՋ։



# ՅԱՆԿ ԳԼԽՈՑ

## Չորրորդ մասին:





# ՎՐԻՊԱԿՔ ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ

## ՄԱՍՆ Ա.

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 1 | 7 | ըստ մեր | ընթերցիր | ըստ մեզ |
| 12 | 15 | պատանը | » | տապանը |
| 45 | 8 | նոր ստոյգ | » | ստոյգ |
| 63 | 33 | օր | » | որ |
| 68 | 1 | Արմենոյ | » | Արմենիոյ |
| » | 25 | մտրակ | » | մտրուկ |
| 80 | 18 | նոյն | » | յոյն |
| 95 | 26 | նոյն | » | ի նոյն |
| 101 | 20 | ետ | » | յետ |
| 104 | 23 | զկազմութիւն | » | զքազմութիւն |
| 126 | | (Այս էջին առաջին երկու տողերը կարդա երրորդ եւ չորրորդ տողերէն ետքը)։ | | |
| 126 | 1 | Նախ... Շինուէի | ընթերցիր | Նախ... Նինուէի |
| 127 | 31 | Վակարշակ | » | Վաղարշակ |
| 156 | 3 | Հրաժարելով | » | Հրաժարելոյ |
| 162 | 4 | Ցուղագս | » | (Խոր. յաղագս |
| 163 | 27 | կ'սպաննէ | » | կ'սպաննէ զմայրն |
| 171 | 33 | ի շնորհակալութեան | » | ի շնորհակալութիւն |
| 182 | 3 | եկան | » | եղան |
| 185 | 5 | կաթողիկսի | » | կաթողիկոսի |
| 188 | 21 | ո՞րպիս | » | որպիսի՞ |
| 196 | 36 | Խորենացեն | » | Խորենացին |
| 198 | 29 | մոլոր | » | մոլար |
| 199 | 34 | Խորենացւոյն | » | ի Խորենացւոյն |
| 207 | 35 | ռափարակ | » | տափարակ |
| 209 | 23 | արո | » | արս |
| » | 28 | կոչեն | » | կոչին |

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 222 | 36 | ցեղ | ընթերցիր | ցեղէ |
| 223 | 7 | Իսմայելա ի | » | Իսմայելացի |
| 235 | 13 | թէ ու | » | թէ դու |
| 245 | 39 | եայ | » | յեա |
| 248 | 11 | ի զաւակայ | » | ի զաւակացն |
| 256 | 20 | Վանձ ահագն | » | անձ Վահագն |
| 258 | 1 | համարեցան | » | համարեցաւ |
| 261 | 32 | քամակեալ | » | քամահեալ |
| 265 | 36 | պատմութեանը | » | պատմութեան |
| 269 | 38 | ազգայնին | » | ազգայինն |
| 272 | 5 | հայկական | » | հայական |
| 273 | 36 | ին | » | մին |
| 277 | 22 | anguement | » | augment |

## ՄԱՍՆ Բ.

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 11 | 23 | արիւնական | ընթերցիր | արիւնահան |
| » | 30 | արիւնականք | » | արիւնահանք |
| 14 | 9 | զպատիճն | » | զպատիժն |
| 78 | 11 | Հռոմայեցւոյն | » | Հռոմայեցւոցն |
| 85 | 1 | մինչև | » | մինչ |
| 118 | 17 | զմմրիկ | » | զմրրիկ |
| 131 | 27 | «Հայն | » | Սարաքոն յասելն, «Հայն |
| 140 | 10 | վտանգի | » | ի վտանգի |
| 156 | 14 | (կը թուի | » | (կը թուի թէ |
| 161 | 16 | մինչև | » | մինչ |
| 170 | 39 | մարդկանց | » | մարդկան |
| 185 | 13 | հայ | » | կայ |
| 193 | 9 | Հրահատ Գ. | » | Հրահատ Դ. |
| 194 | 4 | կը խնդրէին | » | կը խնդրեն |
| » | 27 | ինչպէս | » | մինչև |
| 195 | 3 | արժան | » | արժանի |
| » | 20 | առնլոյ | » | առնելոյ |
| 202 | 1 | Անրշակունեաց | » | Արշակունեաց |
| 223 | 7 | ի խարս | » | ի խորս |
| 268 | 9 | դրութիւնը | » | տեսութիւնը |
| 271 | 3 | ի մի մեհենին | » | ի մեհենին |

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 273 | 36 | Նորա | ընթերցիր | Նովաւ |
| 274 | 3 | (եւ այլուր) Ո՛րպէսն | » | Որպէսն՛ |

---

## ՄԱՍՆ Գ.

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 14 | 26 | այն | ընթերցիր | այն է |
| 30 | 9 | ի մի | » | մի ի |
| » | 27 | բուն | » | զբուն |
| 74 | 38 | Ցայնպէսում | » | «Ցայնպէսում |
| 116 | 23 | տապարեզի | » | տապարեզին |
| 119 | 11 | Համազասպուհու | » | Համազասպուհւոյ |
| 154 | 29 | զահի | » | զահի հարեալ |
| 196 | 35 | այրին». – Սուրենայ | » | այրին. «Սուրենայ |
| 209 | 26 | Սա ակայ | » | Սահակայ |
| 212 | 15 | ոչ չենք | » | զոր չենք |
| 242 | 8 | պատիւ | » | ի պատիւ |
| 255 | 36 | մինչև | » | մինչ |
| 266 | 7 | այդ | » | արդ |
| 276 | 29 | ո՛վ | » | ով որ |
| 299 | 13 | որդի | » | որդիք |
| 354 | 1 | է ի նի վաղուց | » | էին ի վաղուց |
| 370 | 32 | հոգևոր | » | հոգևորի |
| 376 | 20 | հետակազօր | » | հետևակազօր |
| 381 | 13 | պատմութեան | » | պատմութիւնը |

---

## ՄԱՍՆ Դ.

| էջ | տող | | | |
|---|---|---|---|---|
| 73 | 18 | խաղցրախօս | ընթերցիր | քաղցրախօս |
| 74 | 24 | բայց ի | » | բաց ի |
| 79 | 19 | չէ յիշեր | » | չեն յիշեր |
| 82 | 32 | ձեռն | » | ձեռք |
| 83 | 19 | Հայս | » | ի Հայս |
| 85 | 25 | այն և | » | այլ և |
| 91 | 1 | ի պատանին | » | ի տապանին |
| 107 | 5 | բանի | » | բռնի |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 141 | 21 | սուրբն քահանայիցն | ընթերցիր | սուրբ քահանայիցն |
| 156 | 5 | ընգունենք | » | ընդունինք |
| 160 | 28 | բարեկամներն, Վրաց | » | բարեկամներն։ Խզեց յարաբերութիւնը Վրաց |
| 161 | 30 | ախորժակութեամբ | » | ախորժութեամբ |
| 176 | 9 | բերեց | » | բերելով |
| 217 | 28 | (Պարպ. ԾԹ.) | » | (Փարպ. ԾԹ.) |



